# ՍԻՍՈՒԱՆ

ՀԱՄԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿԻԼԻԿԻՈՅ

ԵՒ

## ԼԵՒՈՆ ՄԵԾԱԳՈՐԾ



ՀԱՒԱՔԵԱԼ

Ի Հ. ՂԵՒՈՆԴԵԱՅ Վ. Մ. ԱԼԻՇԱՆ

ՅՈՒԽՏԷՆ ՄԽԻԹԱՐԱՅ



ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

ՌՅԼԴ — 1885

ՊԵՏՐՈՍ ՄԱՐԳԱՐ ԱԼԻՇԱՆ · 1775 + 1834 ·

PIERRE MARCAR ALISHAN   NUMISMATISTE-ANTIQUAIRE

ԴՐԱՄԱԳԷՏ ՀՆԱՀԱՒԱՔ ·

Venise. Étab. Kirchmayr & Scozzi

# ՅԱՌԱՋԱԲԱՆ



րպիսի՞ իցէ բնութեամբ եւ տեսլեամբ վիճակեալն յաստուածուստ եւ 'ի մարդկանէ՝ մասն երկրագնտիս, յորում 'ի միջի վիճակաց այլոց ազգաց, եւ յառաջ քան զյոլովս 'ի Նոցունց, ծանեան եւ ծանուցան Հայք՝ սեփական տոհմ մի մարդկութեան, սփռեալ յանդորրու կամ յարամբի՝ 'ի գերագոյն գետահովիտս զուգահետ գնացից Եփրատայ եւ Տիգրիսի, Երասխայ եւ Կըրի, Ալիւսայ եւ Իռիսայ, եւ յետոյ ուրեմն Սարոսի եւ Պիւռամիսի, զորս եւ գիտացին եւ անուանեցին իւրեանց Հայրենիս. — որպիսի՞ տնտեսութեամբ քաղաքավարելով առտնին եւ ընդ օտարս, կեցին, կրեցին եւ գործեցին այս քառասուն եւ աւելի դարք, Թերեւս հարիւր եւ յիսուն ծննդովք՝ յառաջնոյ անտի Նահապետէն իւրեանց՝ սերեալ յորդւոց յորդիս, մերթ ինքնիշխանաբար եւ մերթ ընդ օտարի միջամուխ ձեռամբ, ըստ ուղղութեան ամենախնամ աջոյն, որ՝ 'ի վերուստ գլխոց անուանեալ գլխոց երկրի՝ վարէ զմարդկութիւնս ընդ հուն ժամանակի՝ յեզր յաւիտենից. — քանի՜օն 'ի սեփական յայնմ հայրենական աշխարհախումբ հրապարակի՝ դէպք կենցաղականք եւ իրակարգութիւնք գործոց. քանի՞ շահախնդրութիւնք. ո՞րքան յուզմունք եւ բազմադիմակ յեղափոխութիւնք. — որպիսի՞ ձեռակերտք յերեսս երկրին՝ 'ի պահուստ կամ 'ի պարծանս կենաց. որպիսի՞ արձանք եւ արձանագրութիւնք՝ մրցողք մոռացութեան, եւ անմահութեան կարծեցեալ ախոյեանք. — ո՞րքան արարոց մնացորդք, աւերակք եւ դերբուկք կուտակեալք խառնեալք յերեսս եւ յընդերս երկրի, զորս ծանակէ եւ ծածկէ արօր հողագործին, (զգայո՞ւն եթէ անզգայ նախնեացն նշխարաց). — որքանութի՞ւն գերեզմանաց համօրէն տոհմից եւ պայազատութեանց խպառսպուռ անճետ եւ անհետ եղելոց՝ ընդ անվերանալի կափարչաւ անցելոյն, որ համահաւասար հարթէ զամենայն հասակ եւ կերպարանս, զբարձրութիւնս եւ նուաստութիւնս, զվայելչութիւնս եւ տառապանս, զյաղթող եւ զյաղթեալ, զհարստահարող եւ զհարստահարեալ. — որպիսի՞ք եւ յագարակս անդ մահու՝ տակաւին կանգունք կամ կիսաքանդ տաճարք պաշտաման Աստուծոյ. ո՞րքան եւ ո՞րզան նուիրականք հոգեւոր եւ մտաւոր հրահանգաց վայրք՝ 'ի շէնս եւ յանշէնս. վանորայք միաբան միախոհ ընկերաց, կամ մենանոցք եւ մատրունք 'ի փապարս եւ 'ի կատարս լերանց մեկուսացեալք, իբրեւ յերկրէ յերկին վերելս խնդրելով, եւ ընդ խնկոց զխանդս հոգւոց հրախառն հառաչանօք սփռելով 'ի հեշտալուր բարձունս. — քանի՜ սլացք եւ խոյանք մտաց, ցնորք եւ գիւտք բանաստեղծից, գրուածք իմաստասիրաց, աղերսք աղօթկերաց, երգք գուսանաց, զեռմունք եւ բղխմունք սրտի, եւ համասփիւռ բարբառք եւ արձագանգք սիրոյ՝ նպատակեալք 'ի համագոյս համակիրս, կամ հասեալք, հարեալք եւ հալեալք, կամ իբրեւ յապառում ապառաժից մերժեալք եւ վրիպեալք. — քանիպատիկ հանդէսք հրճուականք եւ եղերականք. ո՜հ, ո՞րքան հեղեղք արեան խառնեալ ընդ աղբերս կաթին,

եւ արտասուք ընդ քրտանց վիժեալ 'ի դէմս անարօրս եւ արօրեալս. ո՞րքան ճգունք եւ մահու' ջք նահատակաց' 'ի վերայ հաւատոց եւ հայրենեաց. — եւ համօրէն ասել, ո՞րպէս յանընդհատ հոսանս անդ հայասեռ ազգութեանս' մերթ ուռճացելոյ եւ մերթ նուաճեցելոյ, 'ի հաշտ եւ յանհաշտ աղմկի խռ ովեալ եւ խաղաղեալ դարուց եւ դիպաց, 'ի շփոթութեան մտաց եւ հնարից, 'ի ճօճման զինուց եւ խաչի ց, զհարդ անշփոթ եւ անարգել ներգործէին կամք Աստուածութեան' 'ի բազմաժամանակեայ եւ 'ի բազմ յեղանակ աշխարհիս Հայաստանեայց. . . ։ Զայսոսիկ եւ զայսպիսիս' ըղձանայի իբրեւ 'ի քառասուն ամ աց հետէ, յորդորեալ 'ի թելադրութենէ հայրենասիրաց ոմանց եւ յիմոց ընդաբոյս ախորժակաց, հետազօտել եւ 'ի գիր արձանացուցանել, ընծայելով երբեք երբեք փորձս ինչ կամ ճաշակս. որպէս եւ յառաջ ջան զամս չորս' զՏեղագրութիւն գաւառի միոյ Այրարատ աշխարհի, զ*Շիրակն*. յորոյ եւ 'ի յառաջաբանին ծանուցի, զի եթէ ոչ ըստ նմին օրինակի ընդարձակ' այլ եւ ոչ համառօտ' կամէի տեղագրել զմի մի յաշխարհաց եւ գաւառաց Հայոց։ Գործ' թերեւս յանդուգն եւ մանրամասն չափով, որ եւ գամ քան զգամ ընդարձակէր ընդ ըղձիցս եւ ընդ նորանոր ծանօթութեանց 'ի վեր երեւելոց. սակայն եւ ոչ անհնար 'ի գլխաւորել, եթէ բովանդակ երկարութիւն այնքան ամաց ծախեալ էր 'ի նոյն, եւ ոչ դադարեալ եւ քեալ երբեմն վասն իրիք իրիք պատճառաց' զոր ոչ է հարկ հոլանել։

Ցընթացս այնր պարագայի ստորագրեալ էր իմ զմեծ մասն կամ զյոլովս աշխարհաց Հայոց Մեծաց, որք եթէ մի ըստ միոջէ հրատարակեալ էին' կարծեմ թէ եւ ոչ անընդունակք լինէին բանասիրաց. իսկ այժմ' ըստ յոլովել ամաց եւ յաճախել եւ փոփոխել դիպաց, 'ի յայտնել նորանոր աշխարհագրական ծանօթութեանց, եւ մանաւանդ յերեւել ստուգագոյն եւ մանրամասն տեղացոյց տախտակաց, յորոց զուրկ էի յառաջն յայնժամ, եւս եւ 'ի գտանել արուեստի լուսատիպ նմանահանութեան, 'ի վերայ հասանեն բանագիտակք' զի 'ի դէպ է հնացեալս համարել զնախագրեալսն առ յինէն' երեսուն եւ աւելի ամօք յառաջ, եւ հարկ' միւսանգամ վեր 'ի վայր յեղյեղել եւ ուղղել, եւ ըստ այնոցիկ եւ ընդ այնոսիկ' շարագրել եւ բոլորել զմնացեալ մասունս երկրին Հայոց։ Իսկ առ այս' անպատրուակ դիմօք եւ կամօք խոստովանիմ զպարտութիւն. այլ յաւելում եւ ըստ աւետարանական տնտեսին, զի եթէ զայդ «Գործել ոչ կարեմ, եւ մուրանալ ամաչեմ.» այսինքն է, մինչ չափ եւ զօրութիւն տիոց եւ յուշոյ' ոչ եւս ներեն մտադիւր դեգերել յայնպիսի գործ' թող թէ բովանդակել, տակաւին ոչ հանդուրժէ հնացեալն եւ ունակացեալ իղձ' շատանալ հարեւանցի եւ համառօտ ստորագրութեամբ համօրէն հայկական անուանեալ աշխարհաց' իբրեւ քսանից, յորս' եթէ հնար էր' կամէի քայլ առ քայլ յածել եւ գծել։ Արդ' դալարագոյն հասակի եւ ժրագոյն գրչի, նաեւ աջողագոյն ժամանակի թողեալ զերկնեալս յինէն խորհուրդ' լաւագոյն եւս կերպարանել եւ ծնանել, մինչ հարկ եւ օրէն է ինձ տեղի տալ յասպարիզէ, յորում թէ ոչ այլով իւիք' գոնեա իմովս պակեցայ ալեօք, փափագէի' զի ժամանակն միայն եւ գերագոյն կամք' լինէր ինձ յաղթող, եւ ոչ վատթարապէս նահանջաբեկէր, կամ ծրձէր եւ ցրէր ժանգահար ժանեօքն, բայց եթէ տապաստ դնելով 'ի սեամս լուսակոխ տաճարի Աստուծոյ, առ որ միշտ ըղձացայ կառուցանել զակն ոգւոյս, մինչ դեռ մարմնաւորս թափառեալ թափանցեալ' մերթ ցոլայր ցնծութեամբ եւ մերթ ցնդէր կսկըծմամբ 'ի պրակս եւ 'ի պատկերս երկրաւոր հայրենեացն, եւ 'ի յիշատակս' որք եւ յերկրի եւ յերկինս մնան անթառամ։ Քանի՛ գծուծ եւ գետնաքարշ է սիրտ' զոր ոչ արծարծիցէ կայծակն յուսոյ կենաց հանդերձելոց։

Սկիզբն տեղագրութեան Հայաստանեայցս արարեալ էր իմ 'ի հիւսիսային արեւմտեան մարզից, յեզերաց Պոնտոսի մտելով 'ի ծործորս Ճորոխի, եւ անցանելով 'ի գետահովիտ Վտուակայ կամ բնիկն Եփրատայ ( Ֆրադ ), ապա 'ի Կուր գետոյն, անդուստ ոլորեալ զկասպիական ծովափամբք' խոտորէի յօտարախառն Տիգրիս, 'ի հուն ելանել 'ի բնահովիտս Հայոց' յԵրասխայն եւ յԱրածանւոյ, եւ դառնալ 'ի Փոքր Հայս եւ աւարտել 'ի Կիլիկիա. իսկ այժմ աւադիկ հակառակ շրջմամբ' ուր զկատարածն առնել կամէի' անդ առնեմ սկիզբն եւ աւարտ. (անստոյգ ժամանակի թողեալ' եթէ աջողիցէ թափել մասն ինչ 'ի միջոյն, եւ երբ եւ զիարդ եւ է հանել 'ի լոյս)։ Բայց պատճառ գլխաւոր' 'ի յոգունց աշխարհաց նախընտիր առնելոյ զՍիսուան, որպէս հաւանեցայ կոչել զԿիլիկիա եւ ծանուցի զպատճառսն ( յէջ 59 ), այս է, զի 'ի վաղուց հաւաքեալ էր իմ գիտելիս' յաւէտ պատմականս' զայսր աշխարհի, եւ նշանակեալ համառօտիւք, զորս ոչ էր դիւրին լուծանել եւ վերծանել յետամնացիցն իմոց. իսկ վերստին հաւաքել նոցա, թէպէտ գուցէ լիագոյն եւս, այլ կրկին եւ երկար լինէր վաստակ. վասն որոյ բուռն հարի թափել 'ի կորըստենէ զայնքան թուուցեալ եւ հեռացեալ ամաց եւ ժամուց գիծս եւ նիշս, եւ ամփոփել ( թէ եւ ոչ զբովանդակն) յայսմ մատենի։ Ընդ սմին եւ մերձաւորութիւն ժամանակի քաղաքական անցից ազգայնոցս յայսմ նահանգի, համարիմ' թէ հետաքննելի զսա ընծայեսցեն քան զընաւս. թէպէտ եւ ըստ այլ տեսութեանց' առաւելուցուն հրապոյրք աշխարհաց Մեծաց Հայոց. բայց չիք եւ ոչ մի իբրեւ զՍիսուան' որ կարիցէ կցորդել

զսերկեան ազգիս ընդ երիկեանն ժամանակի, յորում տակաւին անձնիշխանութեամբ քաղաքավարէր 'ի միջի եւ ընդ այլոց ազգաց. միանգամայն եւ երկար տեւողութիւն տէրութեան համազգեացս ատ' 'ի միջի չհամազգեացն կալով. այլ եւ' որպէս ոմն 'ի զգօնից նոցին ժամանակակցաց գրէր, շուրջանակի ունելով չորեքդիմի գիշատիչս, յորոց եւ վիշապն' յելուզակք ծովուն. եւ ոմն յայժմու արեւմտեան գրչաց' տակաւին գաղտնիս եւ առեղծուած մի պատմութեան համարի' զայնօրինակ եւ զայնքան բաւել տեւել տէրութեան Ռուբինեանց յայնպիսի դիրս. Թող եւ զբազմապատիկ յատուկ կերպարանս այնր ժամու տնտեսութեան ազգայնոցս' որ առանձին եւ որ ընդ քրիստոնեայ եւ անքրիստոնեայ տէրութեանց, յերի' եւ երբեմն կցորդ գոլով երկոցուն հակառակամարտիցն. զընտելութիւնս ընդ արեւմտեայցն եկեղեցւոյ, լեզուաց եւ հրահանգաց, զգործակցութիւն ընդ վաճառական ընկերութեանց, զխնամութիւնս ընդ յոյն եւ փռանկ թագաւորական եւ իշխանական տանց եւ տոհմից. զհաղորդակցութիւն շահու եւ տեսութեանց եւրոպէական պետութեանց. Ցուցեալ 'ի սոսին եւ եզական դիրք երկրին, միակ 'ի Հայաստանեայս հուպ եւ պատեալ 'ի կենսատու եւ շահաբեր ծովէ, յորոյ կակուղ կոհակս թուէր իմն պարզել Այասաւ' զքարգաւաճ ծոց իւր' հայակիլիկեանն Սիսուան, յետ հաստ առնելոյ զթիկունսն 'ի հարստակողն Տաւրոս.

Ցեղափոխութիւնք դիպաց եւ դրակցաց' քան համաքատակ հոսանք ժամանակի' փոխակերպեցին, ողորկեցին, ապա եւ մաշեցին զգաղթականն հինաւուրց Հայոց' յայսմ աշխարհամէջ մարզի Կիլիկիոյ. Ի բովանդակ յառաջնումն երից դարուց հարստութեան Ռուբինեանց' տակաւին նախնականն նշմարի 'ի նոսա տիպ' խոժոռ եւ հուժկու, յաւելուածով մա՞ուչափ իմն վայրենախառն պնդութեան' յասպատակել 'ի կորզել զկայս եւ զկայանս յունական կուսակալաց, առ 'ի բնակութիւն եւ 'ի պատսպարան մղելոցն եւ խուսելոց 'ի սկիւթական բռնութենէն. յերկրորդումն' չնաշխարհիկ հանճար Մեծին Լեւոնի' յանկարծօրէն թօթափեալ զերեւոյթն եւ զկոչումն *Լեռնցի*, փոփոխէ կամ պատուաստէ յարեւմտեան նրբութիւն, գոգջիր ամենայն տարազու, 'ի վարսից հերաց եւ յագանելեաց' մինչեւ 'ի ծէսս, 'ի բարբառ եւ յօրէնս (Ասիզս) փռանկաց եւ Լատինաց. եւ բազում մասամբ յառաջադէմն յարեւելեայս Հայկազն, առաջին' թերեւս եւ միակ 'ի նոսին գտանի եւ 'ի նիզակակցութիւն եւ յոգի խաչակրաց. — Աշխոյժք Լեւոնի եւ երկոցուն Հեթմեանց' որոց ժամանակ իշխանութեան բոլորէ զոյգոյն զդարն երկրորդ, չեն ինչ նուազ յաշխուժից հետեւողացն Կոփրետեայ, Տանգրեայ եւ Պալտինեանց. ոչ անփառունակք եւ անօգուտք' նահատակութիւնք մերայոցս' յանձուկ սահմանի իւրեանց, քան ըղձոլոս յանճահ եւ յանշահ շահատակութեանց նոցին Անդրածովեայցն. Նոյն ոգի կամ մոլութիւն աւագութեան եւ գահասիրութեան' վառի եւ ճարակի եւ յորդիս Ռուբինի եւ Հեթմոյ. յորմէ եւ բռնաբարութիւնք 'ի թագ, ըղձակերտութիւնք 'ի թագուհիս, հարստահարութիւնք վիճակաց, նուաճմունք ամրոցաց, ելեւելք պարոնայց զմիմեամբք. որպէս յայտնապէս է տեսանել զայսոսիկ յետ մահուան առաջնոյ թագաւորին, եւ յայտնագոյն եւս 'ի բազմաթիւ եւ յեռանդուն որդիս Բ Լեւոնի. Ի փոթորկեալ հոլովման այնր դարու, (որպէս երբեմն եւ յառաջն. սակաւ ինչ եւ յետոյ), 'ի յետնումս յայսմ թատեր հայկական ինքնավարութեան, մերձ ընդ մերձ յարեան 'ի հանդէս կերպարանք նշանաւորք եւ փարելիք, խոժոռք եւ քնքոյշք, եւ մի ըստ միոջէ պարելով 'ի տատանեալ յատակի անդ' տեղի ետուն, ոչ ամենայն թողլով ուրուականս 'ի տրամազարդեալ սախտակի հայկական յիշատակաց. Ցետ դիւցախառն եւ ամեհամուղ պայազատաց Ռուբինի, Թորոսեանցն եւ Լեւոնեանց, որոց վերջին' կորիւնն ստեփանեան' 'ի գագաթն զօրութեան եւ փառաց հասուցանէր եւ հաստատէր զպետութիւնն, յաջորդէ ազնուագոյնն 'ի սեռս պարոնայցն, Հեթմեանն տուն, նահապետութեամբ Մոզոնն Կոստանդնի' քեռորդւոյ Լեւոնի. կենդանի խնամք արձանացեալ յօբելեան մի ամաց' մատաղատունկ գերդաստանին, յոր զուգէ զպայազատն արքայական' զազնուագոյնն Զապել, ճարտար եւ ճապուկ հանճարով, առատ եւ ահարկու ձեռամբ, անսայթաք վարելով զկառս տէրութեանն' լծեալս ժիրաժիր անդրուվարօք իւրածին զաւակօքն. Առ նովաւ եւ յետ նորա' հօրամոյնն Հեթում' երկարակեացն յիշխանութեան քան զամենայն տեարս Սիսուանայ' որ յառաջ եւ որ յետոյ, լնու զայն բազմապատիկ արիական եւ աշխարհաշէն գործոց արգասեօք. մի 'ի ցանկալի եւ արժանափառ թագաւորական կերպարանաց, ոչ լոկ 'ի տոհմայնումս' այլ եւ 'ի համաշխարհական պատմութեան, եւ յիւրումն ժամանակի' ոչ ումեք երկրորդ, բայց արդեօք Սրբոյ Լուդվիկի փռանկաց թագաւորի. ոգի եռանդնոտ, ասպետ կատարեալ եւ բազմաց կատարիչ ասպետաց' բնկաց եւ օտարաց. քաջակորով եւ հանճարեղ, շինարար եւ զուարթարար. խորագիտութեամբ հօրն եւ իւրով քաղցրութեամբ' ամոքեալ զթաթարական բրտութիւնն եւ յիւր զօրաւիգն կրթեալ, որպէս եւ ինքն ոչ անզօր զօրաւիգն հզօրին Հուլաղուի, կայ աներկեւան յիւրումն կայի, յաջ եւ յահեակ ընդլայնելով զնոյն. բերկրեցուցանէ բազմանուագ հանդիսարանօք զաշխարհն համօրէն' որպէս զմի տուն նահապետական, յաճախ 'ի նոյն հրաւիրելով խրախճան' զիշխանազունս արեւելեան Լատինաց, յորոց ոչ սակաւք փեսայա-

ցեալ էին յիւր կամ յիւրայոցն դստերս եւ 'ի քորս. ասպարիզական պերճանօք եւ հեծելուԹեամբ կայտառ ձիաւորաց իւրոց' ոչ միայն Նախանձելի յարդարեալ զՍիսուան, այլ եւ 'ի նոյն յանկուցես լ եւ դասակարգեալ զարուորագոյնս 'ի փռանկական երիտասարդաց…։ Այլ. մարդ ոչ անխոցոտելի' բաղդէ, յետ քառամսամեայ գգուանացն' վտանգեալ երկուստեք, յեգիպտականն ոխուԹենէ եւ 'ի Թաթարաց Թուլութենէ, զոհելով զանգին կեանս տարփալի որդեկացն' 'ի սուր եւ 'ի գերուԹիւն, վասն փրկուԹեան հայրենեաց եւ ազգի' 'ի մազկռինչ կորստեան հասելոյ, ուր զէն բԹէր եւ անկարանայր' անդ զ ìանճարն սրեալ, աջողէր տակաւին կարկատել զխրամատ պետուԹեանն. յոր' կայկայեալ զծիրանածին ան դրանիկն սքանչելապէս գերեԹափ, բարեաւ մնայ ասէ այնուհետեւ ամենայն փառաց եւ փայլմանց, եւ յանձկուԹեան միանձնական խըցկան' մակարական անուամբ եւ կրօնիւք' փոխի յանանց ԹագաւորուԹիւն, փառաւորեալ 'ի կեանս, գերափառ 'ի մահուն. հետեւող յայսմ շաւղի եղեալ հոմանուան իւրուն' տեառն Լամբրունի, եղբօր սքանչելւոյն Ներսիսի, եւ հետեւողս ինքեան Թողեալ զերկոսին եւս համանուանսն, զեղբօրորդին ՀեԹում տէրն Կոռիկոսի եւ Պատմիչն, եւ զԹոռն իւր' ՀեԹում Բ։

Ցետինս սա' Նորահրաշ բանայ յաշխարհի ճանապարհ կենաց, ընդ մէջ արքունի ապարանից եւ խրստակրօն մենաստանի. երկոքումբ եւս զուգապէս վայելչացեալ, եւ քան զյոգունս 'ի զգօնից եւ 'ի քաջաց գերազանցեալ. աշխուժիւ եւ բազմազան հանճարով' Թերեւս ոչ ումեք կրսեր 'ի տան Սիսուանայ, բաց յԱ. Լեւոնէ. կրօնասիրուԹեամբ եւ իմաստասիրուԹեամբ անհամեմատ առաւելեալ. արքայ աշխարհ ատեսուչ ամենայն օրինօք եւ արժանեօք, այլ ոչ Թագաւոր. օրինակաւ իւիք Նմանել կամեցեալ առաջնոյն արքայից Երուսաղեմի, որոյ պատկառեալ 'ի փշեղէն Թագէն Ցիսուսի' չա[illegible]ոյր յանձն ոսկւով պսակի անդէն. ոչ իւիք նուազեալ յառաջնոցն, այլ եւ առաջին խաչակիր յիւրումն ժամանակի, եւ աջողագոյն 'ի լծակցել զխաչ ընդ սուսերի. մերԹ 'ի Թանձրաստեւ ձունձ այլ եւ 'ի ցնցոտիս սրովբէասարաս Ասիզացւոյն պարուրեալ' սքեմաւորաց հաւասարի. մերԹ 'ի նոյն պարկեշտ պարէգօտ' զրահս եւ վարապանակս վերարկեալ' խրոխտալով աշտանակէ 'ի նժոյգս ալէուսեան դաշտաց. ձայն տայ բանակաց, վարէ վարգէ վանէ մինչեւ յԵմեսա, 'ի Դամասկոս, մինչեւ 'ի բրգունս փարաւոնաց. եւ սրբազանեալ սուսերաւն' նշան քաջուԹեան Թողու զպատառուած ամրակուռ դրանց ոստանի ոսոխին, եւ զյաղԹանակն ձօնէ գերեզմանի փրկչին. զպատերազմն յուզէ, զխաղաղուԹիւն հաստատէ. դաշինս կռէ բարեկամուԹեան եւ տուրեւառիկ ընկերահաշտ վաճառականուԹեան. եւ անդրէն սուրալով Թանգուզէ 'ի մԹին մենարանում, վերասլանալ աղօԹանուէր մտօք' ընդ սիրելւոյն իւրոյ փրանկիսկեայ' յանմատոյցն հասարակաց պարունակ երեքսրբենին, եւ մարզել զհանապազաջան բազուկսն' 'ի մատուցումն խնկոց, որպէս եւ 'ի ճօճիւն Նիզակաց։ Անձն եւ միտք յարաշարժ յարակիրԹ. 'ի Սիս կենդրոնացեալ' ձկտի 'ի ծագս արեւելից' 'ի ճամբարս Ղանին Մողոլաց. դառնայ յարեւմուտս 'ի դուռն Բիւզանդական կայսեր. սմա' զքոյր իւր ընծայէ 'ի հարսնուԹիւն' սովորակի սաղմոսելով, « Կացցէ դշխոյ ընդ աջմէ քումէ ». Նմա' զայլ ումն կոյս մատուցեալ' առաւել քան 'ի սէրն' 'ի հաւատս նորին յորդորէ եւ 'ի պաշտպանուԹիւն հաւատակցացն քրիստոնէից. եւ անդրէն դառնայ 'ի վայրս իւր դալարիս եւ 'ի ջուրս հանգստեանն, մխրճել յալիս աստուածախոհուԹեան, յընԹերցուածս եւ 'ի գրուածս պէսպէսս. եւ իսկ եւ իսկ ազդումն առեալ' ճեպի յոստան հայրենի, ցրէ զմախանս բարձաձիգ եղբարցն, դաստիարակէ զեղբօրորդեակն դեռաբուսիկ, փոխանակ իւր Թագաւոր կարգելով. ընդ որում' ապա դաւաճանեալ 'ի բարբարոս ոստիկանէն, իբրեւ դայեակ ընդ դայեկորդւոյ' խողխողեալ անկանի. եղերականաւ' առ ազգայինս իւր կնքեալ զկեանսն, երանական պաշտամամբ յիշատակեալ առ օտարազգի կրօնակիցսն, ընդ որս կենցաղավարելով, անմոռաց ունէր զուխտ հայրենի եկեղեցւոյն եւ զդպրուԹիւն։ — Ոչ պանծալիք իբրեւ զսա' այլ եւ ոչ աննշանք 'ի պատմուԹեան երեւուԹանան եղբարք իւր վեցեքին. մին (Թորոս) 'ի միւսմէն լարիւ աղեղան խեղդամահ լեալ. եւ սա (Սմբատ) որ զՄլեհին ժպրհուԹիւն եցոյց 'ի ՀեԹմեանս, 'ի միւսոյ եւս եղբօրէ (Կոստանդեայ) մերժեալ լինի, եւ երկոքին միանգամայն 'ի ՀեԹմոյ. որում այց առնեն երկինք' լուցանելով անդրէն զշիջուցեալն 'ի նախանձուէ եղբայրասպանին' զաչացն լոյս։ Ի հեռանալ չորեցուն եղբարցն յարքունի Թատերէն' յառաջ մատչին կրսերքն երկուորեակք, յարգանդէ յեռեալք անմեկնելի սիրով, զոր բեկանէ' այլ ոչ լուծանէ' անժամ աշխոյժ երիվարին Ալինախայ' տրոփելով' 'ի յորձանս Կիւդնոսի, յորմէ բարձեալ որպէս գադիշ գետամոյն որայից' ողողեալ դնի յարտասուս սիրայնոյ եղբօրն եւ արքայի Օշնի։ Ցայնպիսեաց աշխարհածուփ ժխորմանց եւ 'ի կասկածելի կենաց հարազատացն' սարտուցեալ կրսերագոյն նոցին եղբայր եօԹներորդ, Ներսէս–Ռուբէն, 'ի խաղաղական եւ քաւչական պաշտօն Աստուծոյ' զանձն նուիրէ, զմիտսն եւ զմատունս' 'ի կցորդիչն երկնի եւ երկրի յարուեստ զմայլական, յերաժշտուԹիւն. զոր Թուի իմն անբաւական Նրբից զգացմանց ոգւոյն գտանելով' կարճակտուր կենօք յերկնայնոցն ճեպել երգակցուԹիւն։

Ոչ ինչ յետնեալ յաւագասիրութենէ եղբարցն, տէնա եւ առաւելեալ փառասիրութեամբ՝ քոյր նոցին անդրանկածին, գոռոզն Զապլուն, գոռոզագունի լծակցեալ փեսայի՝ Լիւզինեանն Ամաւրեայ՝ եղբօր եւ կապտողի Թագաւորին Կիպրոսի, զկղզին զայն եւ զՍիսուան՝ ընդ ամս երկարս լնու աղմկաւ զինուց եւ վիճից, յերկար պատգամօք սրբազան Քահանայապետին եւ աւագ որերոյ, մինչեւ երկոքին եւս ամոլքն՝ զրաւլին բռնի մահուամբ. Նա՝ յիւր ապարանսն դաւաճանեալ. սէ՝ Թերեւս չուառագոյն՝ յարգելան բանտի յոխորտացեալ կոմսին Կոռիկոսի, յորմէ՝ ապա նոյնպէս զմահու լուծանէ վրէժ՝ Լեւոն Դ, հուսկ Թագակիր շառաւեղ Հեթմեանց։ — Բայց եթէ Զապլուն, կամ յառաջ քան զնա Ալիծ՝ դուստր Բ Ռուբինի, հանգոյն արուաց մաքառելով՝ բռնաբարէին զլպրծուն բարձս աւագութեան, այլազգ անդորրագոյն հանդիսից ցանկացողք եղեն յոլովք 'ի փարազուն օրիորդաց Սիսուանայ. անագանեալ դստերք մեծացն այնցիկ *Տիկնայց ձիւնեղէն լերանց* արեւելեան Հայոց, փթթեալք աստանօր 'ի ծաղկածին ջերմահովիտս Ջահանայ եւ Սարոսի, ծիրանազգեացքն Զապելք եւ Կեռանք, Ֆիմիք եւ Ալիծք, ոչ միայն 'ի հայրենի դղեակս, այլ ցանկացեալք, հրաւիրեալք եւ պերճացեալք 'ի պալատս կայսերաց Կ. Պօլսի եւ Նիկիոյ, յարքունիս Կիպրոսի եւ Անտիոքայ, եւ յիշխանատունս ծովեզերացն Ասորւոց, կայսրուհիք, Թագուհիք, բրէնցէսք, մարէջալէսք եւ սենեսջալէսք, որպէս կոչէինն յայնմ ժամանակի. ընդ հոմասեռս համապատիւս արեւմտեայս կամ փռանկուհիս՝ համաքարբառ շրթամբք եւ համաշարժ Թաթիւք ստհորակելով, զրուցատրեցին, երգեցին եւ կաքաւեցին. եւ շատք՝ յիշելով զանհրաժեշտն վերջոտնումն՝ հաւատաւորաց սեւաշուք քօղով ծածկեցին յետոյ զշիջելափառ վայելչութիւն երբեմն ակնախտիղ փաղփեալ երեսաց իւրեանց եւ զերեսաց աշխարհի. որոց վեհագոյն՝ չնաշխարհիկն Զապել՝ պայազատ մեծին Լեւոնի. ոչ այնքան 'ի բարձրադիտակ դարպասի հօրն եւ փեսային դշխոյաբար նազէր 'ի դասս նաժշտաց եւ ներքինեաց, որքան մայրենի խնամով՝ յիւրումն դաստակերտ հիւանդանոցի Սսոյ, առաւել քան զառաստաղ ծեռսն՝ զսիրտն դիւրագորով տարածանելով 'ի վերայ տկարաց եւ տնանկաց. — Նորին դուստր տրտմազգեցիկն Ֆիմէ՝ սխրալի տիկին Սիդոնի, գերագոյն սփոփանս ոգւոյն զեղբայրագիծ աստուածային տառմ առեալ՝ յեղյեղէր տատրակօրէն մնչմամբ 'ի մենակեաց աղօթանոցի. — եւ բազմածին մայր Թագաւորաց եւ Թագուհեաց լամբրոնափայլն Կիռ Աննա՝ հուսկ ամենայնի կրօնաւորութեամբ երկնէր զանձն իւր՝ երկնից։ — Այսպէս գիտացին քորք եւ եղբարք Թագազունք եւ իշխանազունք՝ ճոխաբար քաղաքավարել յաշխարհի եւ ընդ գերաշխարհիկսն վերճեմել։ Թուէր իմն վաղահասոյց կլեմային Կիլիկիոյ՝ ճեպել բարգաւաճել զծնունդս Սիսուանայ եւ ստիպել յեռանդն, 'ի գործ, 'ի փայլ եւ 'ի փառս, յերգ եւ 'ի պար, յընթերցուած եւ յաղօթս, 'ի բարձ եւ 'ի խաչ. իբրու այն թէ չափեալ էր նոցա սուրհանդակօրէն ընթացք ժամանակին. եւ յետ երկուց փառազգեաց դարուց ռուբինական պետութեան՝ գայր հասանէր երրորդն դար կիսասեաւ, զհետ ծգելով գքօղն կափուցիչ Թորգոմական Թագի, մինչ գրեաթէ 'ի նմին պահու եւ համաշխարհական վարագոյր ամանակաց՝ վերարկուէր զՄիջինն անուանեալ Դար անցից պատմութեան աշխարհի, եւ սկիզբն առնէր Նորոյն։

Անմարթ է կարծեմ ճշմարտասէր աչաց չտեսանել զայնպիսի նորածնութիւն կենաց Սիսուանեայց, եւ զբարեմասնութիւնս՝ յոր վայելեցինն եւ յոր մարթ էր արդեօք լաւագոյնս վայելել. ոչ միայն Թագազունքն ասեմ եւ պարոնայք, այլ եւ պուրճէսքն եւ պառիկոսք, եւ փոքր մարդիկն, որպէս կոչէինն յայնժամ դասք քաղաքացեաց եւ ռամկաց. եւ մի 'ի մեծագոյն զարմանալեաց պատմութեան ժամանակին է՝ տեսանել անդանօր ստէպ ստէպ հարուածս կսկծելիս, կոտորածս եւ աւերածս գրեաթէ յառհասարակ սահմանս երկրին, եւ իսկեւիսկ նկատել անդէն զշէնսն կանգնեալս եւ զբնակարանս բազմամարդացեալս, իբրու եթէ 'ի կլանել գերեզմանել դաշտաց զառաջինսն, լերինքն եւ ակառունք ըղխէին 'ի բարձանց հոսանս եւ սերմանս մարդկութեան. որպէս է գուշակել զայս ամենայն 'ի յիշատակաց սփռելոց եւ 'ի մատենիս յայսմիկ. եւ թէպէտ ոչ ունի սա լիովին եւ ոճով զպատմութիւն հարստութեան Ռուբինեանց, այլ եւ ոչ է անբաւական ('ի գումարելն միանգամայն զԴրուագն նուաճման Կիլիկիոյ 'ի Հայոց, զՊատմութիւն Մեծին Լեւոնի, զԺամանակագրական ցանկն, եւ զցրուեալսն 'ի տեղագրութեանս դէպս պատմականս), առ 'ի կազմել պատկեր մի ոչ փոքր, եւ ցուցակ ոչ վարկպարազի՝ քաղաքական, կրօնական եւ բանասիրական կենաց այնր յատկանիշ ժամանակի եւ երկրի Հայոց։ Ախորժելի էր Թերեւս բազմաց՝ ճշգրտագոյն եւս յարդարել զպատմականն այն պատկեր. այլ զի ոչ ներէին այդմ հանգամանք այժմեան ժամանակիս եւ կարեւոր ինչ իմ դիտումն, զայն ոչ արարի։ Սակայն անա տեսանեն ընթերցողք՝ զի եւ չեղէ կարող լռել կամ զանց առնել զյոյժ նշանաւոր եւ կարեւոր դիպուածովք եւ անձամբք, մանաւանդ զերկոքումբք՝ որք գրեաթէ եւ յոչ կամաց՝ յաճախ յանդիման լինէին յամենայն անկիւնս Սիսուանայ. **Լամբրունեցին Ներսէս**՝ յեկեղեցական դասուէ, եւ **Լեւոն Ստեփանեան** յաշխարհական պայազատաց։ Ներսէս եւ Լեւոն. վեհագոյն հանդիսադիրք երկոցուն վիճակաց կենաց այնր ժամանակի, արժանաւորք 'ի հան-

*

դիմանալ ընդ ամենայն վեհազունս աշխարհաց եւ դարուց. զորոց՝ թէպէտ եւ բազում ինչ ասացեալ բազում ուրեք կարծիցիմ, այլ առ մեծութեան կերպարանացն՝ 'ի քննողական միտս տպաւորելոց՝ տակաւին սակաւ ինչ եւ թեթեւ թուին ինձ ասացեալքս. եւ ոչ կարեմ ըստ բաւականին գոհանալ եւ գովել զխորամուխ տեսութիւն ծերոյն այն Սամուելի, եւ զգրիչ Գրիգորի՝ Ակեռացեաց, որք առ կենդանեաւն կամ հուպ զկնի՝ աւանդեցին մեզ զցանկալի ծանօթութիւնս վարուց Սիրելոյն Ներսիսի. այլ եւ զսորին ինքեան սրբամաքուր մատունսն՝ սիրեմ համբուրել, որք յայլեւայլ մասունս բազմաթիւ հեղինակեալ եւ թարգմանեալ մատենից իւրոց՝ թողին յիշատակս զանձնէն։ Բաղձայի այսպէս ասել եւ զ*Լխապատում* գրողէ վարուց եւ գործոց մեծին Լեւոնի՝ եթէ էր իմ գիտացեալ զանուն նորին, եւ մանաւանդ եթէ գտեալ էր եւ զգրուածն ցանկալի։

Այլ ասիցէ եւ այլ ոք թերեւս՝ եթէ տեղագրութեան Կիլիկիոյ էր աստանօր մեզ նպատակ եւ ոչ պատմութեան. — բայց ես, (որպէս սկիզբն բանիցս եցոյց եւ վերնագիր իսկ մատենիս), ոչ կարեմ անջատել զպատմութիւն յաշխարհագրութենէ. այն զի բազում մասամբ ամայացեալ երկրիս մերոյ 'ի քաղաքական կերպարանաց՝ փոքու իւիք զանազանին շէնն եւ անշէն, եւ եթէ զանց առնել էր զպատմականաւն՝ հարկ լինէր զլերանց լոկ եւ զժայռից ճառս ճառել, կամ թէ առ ապառաժս ոմանս։ Քանզի առաւել քան զպատմականն՝ պակասեցին ինձ աշխարհագրական ծանօթութիւնք երկրիս Հայակիլիկիոյ, եւ ոչ զոք գտի 'ի մերազգեացս՝ յընթացս հնգից այս հարիւրոց դանդաղ ամաց՝ որ յետ բարձման տէրութեան Ռուբինեանց, գլուխ մի բանի ողջ աւանդեալ զշինից կամ զաւերակաց տանն Սիսուանայ. բաց 'ի ցամաք էջ մի վիճակագրութենէ պատրիարքական նահանգին Սսոյ, եւ 'ի քանի մի թուղթ պատուական ստորագրութենէ բարեյիշատակ Հօր մերոյ Ղուկայ Ինճիճեան 'ի Նորն Հայաստանի. եւ թէպէտ յառաջ քան զամս ինչ հրատարակէր օրագիր մի եւ ընկերութիւն մի եւս էր յանուն Կիլիկիոյ, այլ ոչ ինչ յայտնեցին կարեւոր. եւ տակաւին 'ի թագնութեան մնան դիրք եւ նիշք երկերիւր կամ երեքհարիւր աւանաց, բերդորէից եւ վանորէից (1), որոց ոչ սակաւուց անուանք յարուցեալք 'ի թերթից մեռելոց նշանակեալ են 'ի մատենիս. այլ յոլովագունից քան զնոսին շինաքնակ տեղեաց անուանք եւ եղելութիւն իսկ՝ ընդ դամբանական դնին կնքով լռութեամբ. նա եւ գերեզմանքն իսկ անյայտացեալք կամ անծանօթացեալք են, նոյն եւ աւերակքն անգամ եւ դերբուկք. մեռելութիւն կրկնամեռ, որ եւ զմահու չունի զարձան, թող թէ զկենդանարարն արձանագրութիւն։

Վրիպեալ արդ 'ի յուսոյ համազգեաց՝ այնքան սիրողաց եւ պանծացողաց 'ի նախնիս, (թո՛ղ զբազմախօսն եւ բարձրախօսս 'ի ժողովս եւ յօրագիրս, եռանդունս յառաջարկութիւնս, երազունս 'ի բանդատութիւն, 'ի դրուատ եւ 'ի պարսաւ, այլ ոչ ոք (2) երեւեցոյց ուսումնական կամ հնագիտական քննութիւն զկողմանցս՝ զորոց այժմու խնդիրս է), հարկ էր ապա դիմել առ օտարս, յեւրոպէացի ճանապարհագրաց քաղել շատ կամ սակաւ գիտելիս եւ տեսարանս տեղեաց, որոց անուանք եւ խորագիրք մատենիցն դրոշմեալ են 'ի վերջ կոյս մատենիս. ընդ որս բազում ուրեք օժանդակեցին ինձ պատուական եւ վաւերական գրուածք մեծահարուստ դիւանաց Վատիկանի եւ Վենետկոյ, եւ այլոց ոմանց (3)։ Բայց եթէ 'ի ժամանակակից ազգակցացս ոչ՝ 'ի նախնեաց անտի գտի երկակի օժանդակս ինձ, զ*Յիշատակարանս*

*1 Յաւարտ հասեալ էր տպագրութիւն մատենիս եւ շարակարգէր յառաջաբանս այս, յորժամ եհաս 'ի ձեռս իմ Մախերասայ Կիպրացւոյ Յունի Ժամանակագրութիւն Կիպրոսի, վասն որոյ ոչ եւս էր ժամ քաղելոյ 'ի նմանէ զգիտելիսն ինչ 'ի մեր պէտս. այլ աստանօր կարգ բանիս պահանջէ յիշել, զի սա երկիցս ասէ՝ Հայոց Կիլիկիոյ ունել երկերիւր քաղաքս եւ բերդս աւուրս, (ς΄ Χώρας καὶ Κάστρη). լսեմ զմեղադրանսն՝ եթէ վասն էր կորուսին։ Թերեւս ընդ քաղաքս համարիցի եւ զաւանսն մեծամեծս. յորս՝ եթէ յաւելցին վանորայքն եւ անապատք, ահա լինին իբրեւ 300 նշանաւոր շինատեղիք 'ի Սիսուան։*

*2 Ոչ մոռանամ զերախտիս Հ. Կղեմայ Սիպիլեան, որ զբերդի եւ զեկեղեցւոյ միոյ արձանագիրս՝ բազում ջանիւ կորզեալ՝ ծանոյց մեզ. (տ. յէջ 70)։ Յառաջ քան զնա Եազըճեան Հ. Ստեփաննոս՝ եհան թրծեալ թղթով հաւասար չափով զգիծս արձանաց ոմանց փոխադրելոց 'ի Տարսոն (273)։ — Եւ քանզի զոր միանգամ գիտացի գրուած զԿիլիկիոյ՝ յիշեցի այլ ուրեք, յաւելից ընդ սոսին եւ զԾերենցն (բանասէր բժշկին Յովսեփայ Շիշմանեան) Թորոս Լեւոնի, հրատարակեալ յամի 1878. որ է վիպասանութիւն կենաց եւ գործոց Բ Թորոսի, 'ի վերայ ծանօթ պատմութեանն հիւսելով եւ զմտացածինն։*

*3 Կատարելութիւն գործոյս պահանջէր արդարեւ յեռուլ 'ի կարգի բանիցս, կամ Յաւելուած առնելով, զբնագիրս դիւանական գրուածոցն այնոցիկ. այլ յոլովութիւն նոցին՝ որք ստուարացուցանէին եւ ծանրագին եւս առնէին զմատեանն, եւ լեզուացն (լատին, փռանկ, իտալ եւ սպանիացի) անծանօթութիւն 'ի յոլովից 'ի մերասեացս, թէպէտ եւ ցանկալի արեւմտեայց, իսկ կրկնութեամբ թարգմանութեանն առաւել եւս ծանրանալ գործոյս, այս ամենայն ստիպեցին զանց առնել զայնոքիւք. բայց միայն հայերէն բնագիրքն ինչ եւ սակաւք ոմանք յօտար լեզուաց մուծան 'ի ներքս։*

գրոց նոցին գրելոց յերկրի անդ եւ 'ի ժամանակի տէրութեան Սիսուանեայց, եւ զ*Պատմիչս*։ Վերծանողք Տեղագրութեանս ակն յանդիման տեսանեն 'ի հատուածոց բանից 'ի սոյն յեռլոց՝ եթէ որքան օգտեցայ 'ի Յիշատակարանաց անտի, զոր քաղեալ էր իմ 'ի ձեռագրաց որ 'ի մերումս մենաստանի հաւաքեալ կան եւ որ յայլեւայլ քաղաքամարս Եւրոպիոյ, եւ զոր հաճեցան ոմանք յազգայնոց մերոց ընձեռել սիրողապէս (1)․ որպէս եւ ես շնորհս կալեալ նոցա՝ յանուանէ իսկ ախորժեմ նշանակել․ նախ եւ արժանապէս՝ զկրօնակից եղբարս՝ զՀարս **Մխիթարեան Միաբանութեան Վիեննայ**․ զՋենեասուզեան **Մեսրովպ** վարդապետ յԱմիդ․ եւ յատուկ եւս յիշատակաւ զայն՝ որ ընտրեալ յիւրայոցն 'ի բարձրագոյն գլուխ ազգի, ոչ կամեցաւ առնուլ յանձն, եւ եւս յոչ կամս հասարակաց՝ յանկարծուց եթող պարապ 'ի շարամէջ կաթողիկոսացն էջմիածնի, **Պատրիարքն Ներսէս**, որ յօժարութեամբ եւս ընդօրինակել 'ի մատենից մեծի աթոռոյն՝ յոր ընծայեալ էր, յիշատակարանս ինչ պիտանիս 'ի ծանօթութիւն տեղեաց եւ անձանց ոմանց Սիսուանեայց․ եւ թէպէտ անկատար մնաց խնդիրն ըստ կենաց նորին, հարկադրէ ինձ հատուցանել զերախտիս՝ առ կամակատար իւր Գերապատիւ Եպիսկոպոս **Մեսրովբ Սմբատեանց**, որ ազնուապէս եւ իւրով ձեռին վաստակաւ լցոյց ըստ կարի՝ զնորայն եւ զիմ փափագ։

Յորդագոյն եւս աղբերք քաղաքական գիտելեաց՝ աներկբայապէս իցեն Պատմիչք մեր ծանօթք, Մատթէոս Ուռհայեցի, Միխայէլ Ասորի, Սամուէլ Անեցի եւ Շարայարող նորին ժամանակագրութեան, Բաբունն Վահրամ վիպասանութեամբն՝ որ փանաքի ինչ է, եւ լաւագոյն՝ Սմբատ Գունդստապլ՝ թէ եւ համառօտ, Հեթում Պատմիչ տէրն Կոռիկոսի, որոյ աշխարհածանօթ Պատմութիւնն Թաթարաց կամ Արեւելից (338) հրատարակեալ 'ի փռանկ եւ 'ի լատին լեզուս՝ ոչ յայտնեցաւ 'ի հայումս, բայց միայն համառօտ Ժամանակագրութիւնն եւ նոյնպէս համառօտ Պատմութիւն կամ Ազգաբանութիւն Ռուբինեանց։ Այլ այսոքիկ ամենայն ոչ յերկարօրէն ճառեն զՍիսուանեայցս եւ ոչ լիովին ցվախճան․ մթին եւ յերկբայս մնայ բովանդակ ժամանակն որ 'ի յետին ամաց Դ Լեւոնի եւ անդր․ միայն դէպք վերջնոյն (Ե) Լեւոնի եւ կատարած տէրութեանն՝ յայտնեցաւ յամս յայսոսիկ 'ի Ժամանակագրութենէ փռանկ երիցու եւ յետոյ եպիսկոպոսի միոյ՝ **Յովհաննէս Տարտէլ** անուանելոյ, որ եւ զառաջնոց մերոց թագաւորաց եւ զպարոնայց Կիլիկիոյ առնէ յիշատակութիւն, այլ սղալ կամ թերուղիղ․ սակայն զիարդ եւ է՝ պատուական է գործն․ եւ որպէս 'ի սմանէ զվերջինսն՝ եւ զառաջնոցն մերոց յիշատակս քաղեցի յայլոց փռանկ եւ լատին ժամանակագրաց եւ պատմչաց, զորոց գրուածս հաւաքեալ հրատարակեն արդ 'ի Բարիզ անուամբ *Պատմչաց Խաչակրաց* եւ *Լատին Արեւելից*, յարելով 'ի նոսին եւ զԱրեւելեան պատմիչս նոցին իրաց՝ զՀայս, Յոյնս եւ Արաբացիս։ Ըղձալի էր յաւէտ եւ յազգայնոցս մերոց գտանել այսպիսի մանրապատում գրուածս․ — ըստ մասին լցին զայս իղձ՝ մատեանք երկու 'ի յետին ամքս հասեալք 'ի ձեռս իմ, եւ մին մերձ յաւարտ տպագրութեան մատենիս․ առաջինն է նման Սմբատայն պատմութեան, յՈւռհայեցւոյն քաղուած առնելով եւ շարայարելով զգործս Ռուբինեանց մինչեւ ցերկրորդն Լեւոն, նոր եւ կարեւոր դիպաց յիշատակօք, զորս յեռեալ եմ 'ի կարգի Պատմութեանն Լեւոնի եւ 'ի տեղագրութեանս։ Անյայտ մնաց անուն հեղինակին, զի առաջին եւ վերջին թերթք մատենին գրելոյ 'ի վերջկոյս ԺԳ դարու կամ 'ի սկիզբն ԺԴ, որպէս եւ մասն 'ի միջոյն՝ անկեալ էին․ վասն որոյ 'ի կարգի բանիցս կոչեմ զսա *Պատմիչ Կիլիկիոյ* կամ *Անգուենի Պատմիչ*, եւ կամ սոսկ *Պատմիչ մեր*։ Անանուն մնայ եւ երկրորդին հեղինակ, այլ միայն վկայէ զանձնէն լինել երէց Երեքխորան եկեղեցւոյ Սսոյ՝ 'ի կէս ԺԵ դարու․ եւ է ժամանակագրութիւն կամ տարեգրութիւն՝ ոճով Ուռհայեցւոյն, քաղելով յայլեւայլ պատմչաց, որպիսիք են Միխայէլ, Վարդան, Կիրակոս, եւ առաւել՝ Սամուէլ Անեցի եւ շարայարողք նորին, եւ այլք անծանօթք, եւ յիշատակարանք գրոց․ ըստ այլեւայլ հեղինակացն՝ այլայլի եւ ոճ շարագրութեանն եւ յանգի 'ի ռամկականն․ բազմասղալ է եւ գրութիւնն․ իսկ կարգ պատմութեանն հասանէ մինչեւ 'ի սկիզբն ԺԵ դարու, եւ յայտնէ ոչ սակաւ նոր եւ պիտանի գիտելիս, մանաւանդ զվերջնոյ (Գ) Կոստանդնէ, եւ որ ինչ յետ բարձման թագաւորութեանն, բայց ոչ յիշէ զօրինակ բարձմանն, եւ բնաւ ոչ զԼիւզինեանս․ *Ժամանակագիր Կիլիկիոյ* կոչեցի զսա 'ի *Յաւելուածին*։

Ակնարկեցի 'ի վեր անդր՝ զի յընթացս հիւսուածոյ Տեղագրութեանս՝ ծնաւ յիս խորհուրդ գրելոյ ուրոյն զգործոց Լեւոնի Մեծի, եւ առ անթերի զնոյն բովանդակել՝ հարկ եղեւ երբեմն երկրորդել զնախագրեալս 'ի Դրուագի երկրակալութեան Ռուբինեանց․ այսպէս եւ այլուր՝ մերթ պատմական եւ մերթ աշխարհա-

*1 Ասացից եւ ինչ մի իբրեւ պարզօրէն 'ի գիտութիւն եւ 'ի զարմանս ապագայ դարու․ զոր ակն ունիմ խոհեմագոյն քան զներկայս եղանիլ, զի եւ ոմանք զլացան, եւ այլք ոմանք եթէ ետուն ինչ՝ ճարտարեալ ծածկեցին զանուանս եւ զհեղինակս մատենիցն․ եւ ուր առաւելապէս յուսալի էր ինձ գտանել յիշատակս պիտանիս՝ այնքան պնդութեամբ ընդդէմ փակեալ էր, զի եւ բաղխել անգամ զդրունսն աւելորդ վարկայ։*

գրական հարկ ստիպեաց 'ի կրկնութիւն. իցէ ուրեք եւ առ մոռացութեան զայս արարեալ. որոց ներողամիտս յուսամ զհայրենասէրս, նոյնպէս եւ սակս այլեւայլ օրինակաւ գրելոյ զանուանս ինչ, որք բազմագոյն եւս օրինակօք այլայլեալ գտանին առ նախնիս, եւ 'ի յիշատակել իմում զբանս նոցա' ըստ նոցին տաւից աւանդեալ եմ զուղիղ եւ զսղալ. իսկ յիմ գրուածս' յետինքն եւ որ 'ի ցանկս' ընտրելիք են։ — Արժան է ինձ յիշեցուցանել (մինչ զԼեւոնէ են բանքս) եւ զայս, զի սա *Երկրորդ* կոչի սովորաբար 'ի դասագիրս եւ 'ի նմանիս, այլ ես *Առաջին* կոչեմ (իբրեւ Թագաւոր), ըստ հնագոյն պատմչաց եւ ժամանակագրաց, որք միշտ Երկրորդ գրեն զորդին Ա Հեթմոյ. Երրորդ' զԹոռն երկրորդին' զորդին Թորոսի. Չորրորդ' զորդի եղբօր սորին' Օշնի. ապա ուրեմն վերջինն Լեւոն Լիւզինեան' *Հինգերորդ* է եւ ոչ *Վեցերորդ*, եւ այնպէս արժան է սրբել եւ ընթեռնուլ զլատին տապանագիր նորին, եւ ոչ որպէս ընթեռնոյր եւ իմանայր Լանկլուա եւ այլք. որպէս թէ Լեւոնդ այդ եղեալ իցէ *Հինգերորդ Լատին թագաւոր Հայոց* (1). քանզի յառաջ քան զնա մի ոք միայն յայնմ սեռէ թագաւորեաց, հօրեղբայր նորին' Կի, իսկ հայրն' Ճուան' պայլ թագաւորութեան եկաց եւ ոչ թագաւոր։ Զազգաբանութիւն սոցա (Լիւզինեանց) ստուգեալ 'ի Տարսւելէ եւ 'ի մերայոց' յարեցի յ*Ազգացուցակն Հեթմեանց*, յոր եւ յօդեալ իսկ էին 'ի մայրենի բնէ' 'ի Զապլունէ' դստերէ Բ Լեւոնի։

Յիշատակ այսր բանի առաջնորդէ ինձ ազդ առնել վասն Ազգացուցակ պատկերիս համօրէն Հեթմեան տոհմի, զի յերիւրեցաւ ըստ աւանդութեանց մերոց պատմչաց եւ տարեգրութեանց Մ՛աղաքիայ Դպրի, եւ ըստ *Ազգատոհմից Անդրածովու* (Familles d' Outre-mer), գործ փռանկ գրչի, զոր յեղեալ է 'ի հայ եւ մերս Հեթում պատմիչ. առ 'ի դիւրահասու լինել իւրաքանչիւր ազգաց կամ ծննդոց' դիպողագոյն վարկայ զայս ձեւ շրջանակաց (Ա-ԺԲ), որովք զատուցանել հարք յորդւոց, եւ նշանակին սոքա շարաւեղօք կամ գծովք, եւ որ դիտէն' իմացի, զի յորմէ գիծն ելանէ ուղղակի կամ ընդ մէջ անցանելով' նա ծնող է այնր' առ որ անցանէ գիծն սլաքածայր կամ անսլաք (2)։ Զափ կամ անձկութիւն շրջանակացն' ոչ ներեաց յաւելուլ եւ զանուանս կանանց Հեթմեան սերնդոց, այլ որք կամիցին գիտել' գտցեն նշանակեալ այլուր (543-4)։ Ոսկէգոյն միջագիծն ցուցանէ զուղղակի կամ զանդրանկածին ազգասերունդն, որ 'ի Հեթմոյ նահապետէ ցՀեթում որդի Դ Լեւոնի' լինի ազգ մետասան։

Ի պատկերէ աստի անցանելով 'ի ծանօթութիւն այլոցն եւս, նախ յանդիման լիցի *Բուսացուցակն* (յէջ 17), զորմէ աւանդեալ է 'ի կարգի բնագրութեանս. իսկ աստանօր յաւելից ասել կամ կրկնել, զի որքան ցամաք եւ բազմաց անճաշակ իցէ անուանակարգութիւն Բուսաբանութեան Սիսուանայ, մարթ է զնոյն ստուգագոյն մասն ասել բնական գիտելեաց երկրին, զի արանց հմտից քննեալ է եւ դասակարգեալ. իսկ հայերէն անուանքն, որպէս եւ նշանակեալ եմ անդ, է ինչ որ ըստ նախնեաց են, եւ այնպէս համարեցայ պատշաճել, եւ է որ լոկ տառադարձութեամբ կամ թարգմանութեամբ յոյն եւ լատին բառիցն եւ իմաստից, եւ ոչ այլոց լեզուաց. եւ այս ամենայն համարեցի իմովսանն 'ի պէտս այսր մատենի' եւ ոչ առ հասարակաց ընծայութիւն. զի գործ ծանր է եւ բազում քննութեանց կարօտ' զայսպիսիս ճշդել եւ ճշգրտել, թող թէ օրինադրել։ Յուշ արարից եւ զայս, զի զոմանս 'ի յառաջագոյն թարգմանելոցս անուանց' ուղղեալ կամ փոխեալ եմ յետոյ, եւ ըստ այնմ կարգեալ 'ի վերջ գրոցս, ըստ բառական կարգի լատին անուանցն։ Գիտուն լիցի եւ վասն պատկերացն ինչ բուսոց եւ ծաղկանց, զի ոչ անընտրողաբար զազգ ինչ նոցին կերպարանեմ, այլ զբուն զայն տեսակ' զոր 'ի Կիլիկիա տեսեալ եւ գծագրեալ է գիտնոց ոմանց։

Պիտանեգոյն եւ ցանկալի եւս էր անշուշտ Աշխարհացոյց քարտն Սիսուանայ կամ Հայակիլիկիոյ,

1 Cy gist le très noble et excellent prince Lyon de Lizingne *Quint, Roy Latin* du royaume d'Armenie, *եւ ոչ* Lyon de Lizingne, Quint Roy, etc. — *Բայց ոչ կամիմ զանց առնել 'ի յիշելոյ, զի ոմանք 'ի ժամանակագրաց Հայմարին ընդ մէջ Բ եւ Գ Կոստանդնեայց' թագաւորեալ կամ բռնաբարեալ զթագն' այլոյ եւ անծանօթի ուրումն Լեւոնի. սակայն յարդ ոչ երեւեցաւ վաւերական ծանօթութիւն կամ յիշատակարան ինչ յանուն սորին։*

2 *Սխալեալ է սակաւ ուրեք վիմագրողին 'ի գիծսն. օրինակ իմն, յ'Ե շրջանակի' երկու գիծք սլաքաւորք ձգեալ են 'ի Վասիլ' որդի Կոստանդնի Պայլի. յայտ է զի մին աւելորդ է, եւ զի' ոչ էր պարտ հպեցուցանել 'ի նոյն զշառաւիղսն' որ յեղբօրէ նորա' Լիկոսէ' ելանեն եւ ձգին 'ի չորեսին որդիսն' յ'Ը շրջանակին։ — Յ' Թ շրջանակի տեսանի մի գիծ ձգեալ յՕշին եւ յԱլինախ արքայորդիս, քանզի արգանդակից երկուորեակք են, որպէս եւ յայլ երկու զոյգ եղբարս կամ քորս նոցին. բայց միւս գիծն' որ յԱլինախէ ձգի 'ի միւս Ալինախ' սխալ է, հարկ էր յեղբօրէ նորին յՕշնէ արքայէ ձգիլ, զի սորա որդիք են Ալինախն այն վաղամեռիկ եւ Լեւոն Դ, նշանակեալք 'ի Ժ շրջանակի։ — Վրիպեալ է ուրեք եւ յերանգս գունոց, որովք կամեցայ որոշել զտոհմս եւ զտեարս պայազատս այս կամ այն վիճակաց կամ պաշտամանց. որպէս, յ'Թ շրջանակի պարտ էր բացագոյն կարմիր լինել յատակի անուան երկրորդն Սմբատայ գունդստապլի' թոռին մեծին Սմբատայ, զի այն գոյն սեփականեալ գրեցաւ տոհմին Գունդստապլեանց. 'ի դէպ էր եւ շառաւիղին ուղղագոյն նկանել 'ի Սմբատայ եւ անցանել 'ի դուստր իւր Մարիւն' 'ի Ժ շրջանակի։*

յորում՝ ըստ հաւանագոյն կարծեաց՝ նշանակեցի զկողմանս գաւառաց եւ վիճակաց ժամանակի տէրութեան Ռուբինեանց, որչափ ինչ գտի առ պատմիչս, բայց ոչ ուրեք ոճով եւ բովանդակ աւանդեալ։ Քանի՜ ըղձալի էր հաւաստել եւ զդիրս եւ նշմարս նախայիշեալ երկերիւրոց եւ աւելի եւս բերդից, դղեկաց, աւանաց եւ վանորէից, այլ եւ զգիւղից հայանուանց. *զԲերդորէիցն*, որք՝ եթէ օրէն իցէ ասել, տաճէլին եւ արծարծէին զմարմին պետութեան Սիսուանայ, ընդ նմին եւ զկորովի հինաւուրց Հայկազանց, զփործ եւ զճաշակ նետից քաջաձգացն այնոցիկ եւ քաջածիոց հարանց աղեղնաւորաց. ո՜ տայր եւ զգաղտնիս անդ գործեցելոցն եւ գրեցելոց՝ յայտնել. — եւ *զՎանորէից*, որք անշիջատոչոր վառարանք եղեն աղօթանուէր հոգւոց եւ բանասէր մտաց, ցնցուղք սրբամաքուր սիրոյ, եւ շրջասփիւռ ճաճանչք իմաստից, յորոց կայծակունս տակաւին հրճուիմք եւ ջեռնումք եւ մեք՝ հնգեքումք եւ վեցեքումք սառնեղէն դարուք վերջացեալքս. եւ ոչ գարշիմք (եթէ միայն գտեալ էր) համբուրել զսեամս զոր կոխեցին, եւ զսենեակս յոր մենացան խոկացին եւ գրեցին՝ Լամբրունեցիքն լուսաւորք, Սկեւռացիք իմաստայեղցք, Մաշկեւորք հմուտք, Դրազարկք կարգապահք եւ հսկողք 'ի վերայ Թագաւորական հանգստարանաց, եւ համեմիչքն հոգւոց երգահան Արքայկաղնեցիք. վասն այնորիկ եւ ոչ խորշեցայ, մանաւանդ թէ եւ ախորժեցի յերկարել զբանասիրական ծանօթութիւնս, կամ որ ինչ հայկականս դպրութեան պատշաճէր՝ 'ի ստորագրեալ տեղիսն եւ յանձինս. քանզի զի՞նչ քան զմտաւորն եւ զհոգեւոր՝ գուցէ գերագոյն գովելի եւ ճառելի։ Այլ ո՜ տայր ինձ զարթուցանել զայնպիսի խոհարանաց եւ գրարանաց զարձագանգս, զպատրաստականսն երբեմն յառժամայն կրկնումն եւ բեկբեկումն վանգից երգոց եւ տաղից՝ յանկիւնս քարանձաւաց լերանց անսպառն Տաւրոսի, ուր արդ միայն հողմն հոմաձայն հնչէ վայրապար մոլեալ 'ի մայրիս ծերացեալս եւ մանկացեալս։... Եթէ անծանօթ առ 'ի մէնջ մնան այսպիսեաց վայրաց դիրք, չեն ամենեւիմբ աներկբայք եւ նշանակեալքս 'ի քարտին, բաց 'ի ծովեզերեայցն եւ քաղաքաց ոմանց. քանզի մինչեւ ցարդ չէ արարեալ յերկրի անդ ուսումնական կամ եռանկիւնական չափողութիւն, եւ մարթ է ստոյգ քննութեան՝ հիմնովին տեղափոխել զհսկայաձեւ լերինսն անգամ, եւ այլաձեւել զսահմանս Կիլիկիոյ։ Երկբայականք են եւ յոլովից նորոց անուանց հնչմունք կամ գրութիւնք, պէսպէս եւ անհեթեթս ծռեալք եւ ծեքեալք յեւրոպէացւոց, որոց՝ յայսմ մասին (լսողութեան արեւելեան անուանց) յոյժ ծանրալուր եւ խօթ են ականջք. վասն որոյ եւ ուրեք ուրեք հարկ եղեւ զտարակուսանաց նշանն (?) կարգել առ նոքօք. եւ ուրեք եւս խապառ զանց առնել զանուամբքն. այսպէս եւ զորոշիչ գծովք սահմանաց գաւառաց եւ վիճակաց, զի հինքն անծանօթք են, նորքն՝ կիսածանօթք եւ ոչ պիտանիք իմս դիտման. իսկ զընդհանուր սահման Կիլիկիոյ՝ ընդարձակագոյնս ձգեցի, ըստ ժամանակի աշխարհակալութեան Մեծին Լեւոնի. մարթ էր անդրագոյնս եւս տանել ընդ հիւսիսի՝ 'ի վերնահովիտս զուգառաջն Սարոսի, այսինքն Ծամանդեայ եւ Սաւանայ, զորս ոչ պարագրէ չափ քարտիսիս, եւ որք դուն երբեք նուաճեցան 'ի մերայոցս, որպէս եւ Մարաշ, զոր եւ ոչ իսկ ստորագրեցի, քանզի սեփական է Գերմանիկիոյ աշխարհի։

Ընդ քարտիցս այսոցիկ եւ տախտակաց՝ գտցին 'ի բազում օրինակս մատենիս եւ պատկերք ինչ գունագոյն երանգօք նմանագրեալք 'ի ձեռագիր մատենից. որպէս, *Խորան* մի Լամբրունեան կամ Սկեւռեան աւետարանի (83), գրելոյ յամի 1192. *Պատկեր Ցովհաննու Աւետարանչի* եւ *Զարդք* նկարեալք 'ի Պիծակ Սարգսէ՝ յամի 1331. նորին դարձեալ 'ի նմին ամի՝ *Պատկեր Դ. Լեւոնի* բազմելոյ յատեան դատաստանի (481), յորս է տեսանել եւ զտարազս ինչ զգեստուց ազգայնոց ժամանակին. — *Պատկեր Ջիւսորի* Սիսուանայ (487), եւ *Մեծագործն Լեւոնի* 'ի միջի հոյակապ տիրապետաց իւիք իւիք առընչացելոց նմին (435)։ — — Են եւ երկու արեւատիպ պատկերք, *Հերմոյ Պատմչի* ընծայութեան գրոցն առ քահանայապետն Կլեմէս Ե՝ յԱւենիոն փռանկաց (340), եւ *Այասոյ ազատուրփանն* (392)։ Դարձեալ, ճշգրտատիպ պատճէն Պարգեւագրի Բ Լեւոնի առ Գենուացիս (388), *Պայմանագիր* Կոստանդնի Տեառն Սարուանդիքարի առ Տեւտոնեան ասպետս (210), եւ հաւասարն *Արձանագրութեան Դեղնքար* դղեկի (273)։ Առանձինն ինչ գիտելիք միոյ միոյ 'ի պատկերացս՝ աւանդեալ են յիւրաքանչիւր կարգի բանից, ըստ նշանակեալ իջից մատենիս։

Ցետ զայս ամենայն ծանուցանելոյ հասարակաց հանդիպելոց գրոցս այսմիկ, մնան ինձ պարտք անուշակք հրատարակել եւ շնորհս եւ երախտիս՝ որոց միանգամ պէսպէս օրինակօք նիւթականաւ կամ ուսումնական՝ օժանդակեցին 'ի հիւսուած եւ 'ի հրատարակութիւն սորին, եթէ ազգայինք եւ եթէ օտարք։ Ի յետնոցս՝ նախակարգեմ զաշխարհածանօթ աշխարհագիրն **Քիբերդ** (H. Kiepert) գերմանացի, որ յանձն էառ մարդասիրապէս զիւր ձեռագիծ քարտ մի Կիլիկիոյ՝ եռապատիկ մեծ քան զվիմագրեալս $\left(\frac{1}{400,000}\right)$ ընծեռել ինձ. — ուղէկիցքն **Ֆավռ** (C. Favre) եւ **Մանտրոյ** (B. Mandrot), վերջին քննողք Կիլիկիոյ, մինչչեւ ինքնին հրատարակեալ՝ ետուն ինձ պատկերս լուսագրեալս զՍսոյ եւ զայլոց ինչ բերդից, որպէս նշանակեալ եմ 'ի կարգի նոցին տեղագրութեան. — հմուտ եւ ազնիւ կոմսն **Ռիան** (P. Ed. Comte Riant) ուղղեալ

Ընկերութեան Լատին Արեւելից, որ զխնդիրս իմ եւ զհարցուածս անդանդաղ լնոյր, եւ ինքնայօժար պարգեւէր զպատուական հատորս Դիւանաց այնր ընկերութեան եւ զիւրոց երկասիրութեանց. — Նորին ընկերութեան եւ Հնագիտաց կաճառոյն կցորդ, հետաքննողն փռանկ կամ լատին իշխանութեանց եւ գաղթականաց յարեւելս՝ Պ. Րէյ (E. Rey), զիւրոց համանման գրուածոց օրինակս՝ ընդ հրատարակելն եւ առաքէր. — Ժաքսոն կամ Ճէքսըն, (J. Jackson) քարտուղար Աշխարհագրական Ընկերութեան Բարիզու, բարեսիրապէս փութայր ծանուցանել ինձ զնոր կամ զհին հրատարակեալ գրեան պիտանի վասն իմոյ գործոյս. — Եդուարդ Պուասիէ (Ed. Boissier) բուսաբան, որ մեկնեաց եւ ծանոյց ինձ զանուանս բուսոց եւ բուսաբանից ոմանց։ — Իսկ 'ի մերձաւորաց ազգայնոց՝ որք նիւթականաւ սատարեցին 'ի պատրաստութիւն պատկերաց եւ 'ի տպագրութիւն մատենիս, առաջին, որպէս եւ յայլ բազում ազգային օժանդակութիւնս, եղեւ ծանօթ բարերարն՝ Պ. ՄԿՐՏԻՉ ՍԱՆԱՍԱՐԵԱՆ, պարգեւելով 1000 ֆրանգ, եւ այլ եւս հազար՝ 'ի գին տպագրեալ օրինակաց մատենիս, որք եւ առաքեցին նմա իսկոյն. — Պ. ՅՈՎՍԷՓ ԻԶՄԻՐԼԵԱՆ, միւս եւս օժանդակ գրագիտաց, սակաւուք յառաջ քան զվախճանն՝ պարգեւեաց 500 ֆրանգ. — սոցին համաբնակ եւ համամիտ բանասէրն Պ. ԿԱՐԱՊԵՏ ԵԶԵԱՆ խորհրդակից եղեւ սատարել՝ գնելով ոչ սակաւ մատեանս տպագրեալս 'ի վանս մեր։ Ընդ սոսին հաճոյագոյն է ինձ յիշել եւ զլուսմայն՝ առաւելեալ սիրով քան քանակաւ՝ զհանգանակեալն յոմանց աշակերտելոցն ինձ երբեմն 'ի Ռափայէլեան եւ 'ի Մուրատեան վարժարանս։ — Ճանաչողք հանգամանաց տպագրութեան եւ մատենիս այսորիկ՝ 'ի վերայ հասանեն, զի այս ամենայն նպաստ՝ սակաւ ինչ մասն է պահանջեալ ծախուցն, զորոյ ծանրութիւն ստանձնեաց Ուխտս յընկճիչ պահու *, յուսով ոչ անխնդիր եւ անպէտ մնալոյ մատենիս, այլ առաւել եւս՝ հայրենասէր եւ որդէսէր գթով, զոր սրբագոյն եւ անուշագոյն պարտս գիտեմ եւ ես՝ կրել եւ գրել. նոյնպէս եւ զամենայն խնամս ձեռնտուացն ինձ՝ Հօր եւ Եղբարց, յընդօրինակութիւնս, 'ի սրբագրութիւն, 'ի տպագրութիւն եւ 'ի յօրինուածս ցանկի, եւ որ այլն եւս։

Եթէ այլ իմն օրինակ՝ այլ ոչ նուազ քաղցր եւ դիւր է սրտի՝ յայտնել զսատարութիւն երկուց եւս ազգայնոց. մի այն՝ զոր յայտնեաց վաղ ուրեմն Տեղւացոյց քարտն Շիրակայ, երբեմն իմ աշակերտ եւ այժմ բարեկամ բարեյօժ, ՅԱԿՈՎԲ ՏԱՄԱՏ. որ եւ 'ի պէտս այսր մատենի՝ ազգ ազգ մատոյց սպաս, գնիւք ծանրագին գրոց, նկարելով զվերոյիշեալ պատկեր առմանն Այասոյ, լուսագրութեամբ պատկերաց Հեթմոյ Պատմչի, եւ իւրով եւ վարձաւոր ձեռամբ ընդօրինակելով 'ի գրչագիր եւ 'ի տպագիր մատենից մեծի գրատանն Բարիզու՝ երկար բանս. որովք եւ առաւելեալ քան թէ նուազ գտանի եւ 'ի սատարողսն նիւթականաւ։ — Միւսն՝ մերձաւորագոյն եւս ինձ՝ որչափ մարթ էր լինել 'ի վերայ երկրի, որ լոկ ՀԱՅ ՀՆԱՀԱՒԱՔ անուամբ կամեցաւ ծանօթանալ 'ի մատենիս, գերագոյն՝ որպէս սիրելութեամբն՝ եւ բանաւոր սատարութեամբն գալ, մատակարարելով զսիպս եւ երբեմն զիսկական իսկ հին դրամս զմերոց Սիսուանեայց եւ զօտարաց, որոց պատկերք տեսանին յաճախօրէն 'ի տեղագրութեան Ծովայնոյն Կիլիկիոյ. այլ 'ի վեր քան զամենայն եւ բնաւից պիտանեգոյն՝ ընձեռելով զերկոսին նախայիշեալ սոփերս եւ աղբերս բանից, զ*Պատմիչն* եւ զ*Ժամանակագիրն* Կիլիկիոյ, յորոց՝ թէ որքան օգտեցայ 'ի տեղագրութեանս եւ 'ի պատմագրութեան՝ կանխաւ եւս ծանուցի. եւ ըստ այնմ կշռեսցին արդիւնք նորին եւ անխնայ նախանձ 'ի խոյզ եւ 'ի խնդիր Հայկական յիշատակաց՝ ըստ ընդաբոյս հօրամոյն բարուցն։...

Ցետինս այս յիշատակ հրապուրէ զիս 'ի վեր եւս ելանել կամ թէ 'ի վայր եւս իջանել, յաւուրս իմ առաջինս. եւ 'ի լրումն ծանօթութեան սատարչաց եւ սիրողաց Սիսուանայ եւ նշխարաց նորին հաւաքողաց՝ յիշել զերիցագոյնն 'ի մերազնեայս, որ եւ սիրով նորին՝ 'ի Հեթում անուն կնքեալ էր զմի յորդւոցն. եւ մինչեւ ուրեք էր յայսմնեալ Ռուբինեան ոսկի դրամոյ, գտեալ նորա զմիակն ցարդ ծանուցեալ ոսկի կոստանդնի, զմակագրեալն *Սայ բերդն է թագաւոր* (216), զնոյն՝ տարօրինակ իմն կամ եթէ հաճոյ թուիցի՝ տարապայման դիպուածով (զոր ստիպիմ յայտնել), իբրեւ անզուգական գանձ 'ի գրապանակին կրելով. եւ ոչ ուրուք գիտելով, նովիմբ յետ վախճանին դիպապատիկ եղեալ յուղարկիւր 'ի հանգիստ հողոյ. յորում՝ յետ հրաժարելոյ յուղարկաւորացն՝ դիւթաղին ըստ յուսոյ կրկտելով՝ գտանէ յ'անկարծ եւ յանպուրծ պահարանին զդահեկանն այն, եւ իբրեւ 'ի գաղտ դարանաց մահու եւ տապանի թափելով, բերէ հաւատարիմ մտօք առ քահանայն հանդիսապետ յետին հանդիսին, (յետոյ առաջնորդ Ուխտիս մերոյ՝ Տէր Գէորգ Հիւրմիւզեան). եւ սորա նոյնպէս տարեալ առ անդրանիկ հանգուցելոյն, ընդունի 'ի նմանէ զնոյն ոսկի՝ 'ի պարգեւի մասին եւ 'ի մաղթանս հոգւոյ. եւ պահի արդ 'ի թանգարանի վանացս։ Աստանօր երկ-

* Ի *յիշատակ ապագայից՝ ոչ անճահ համարիմ նշանակել եւ զայս, զի սկիզբն գրաշարութեան գործոյս եղեւ յ'9 յուլիսի 1883 ամի, եւ յետ աւուրց ինչ, (այն է 'ի 14 նորին ամսոյ) հանդիպեցաւ արկած Հրդեհի Վանացս*

ամաւ յառաջ քան զայն դիպուած՝ վիճակեալ եւ ինձ աշակերտիլ եւ յօդանալ. եւ արդ այժմիկ յետ յոբելինի ամաց՝ իբրեւ 'ի տարերս ընդաբոյս հայրենական ախորժակաց՝ ծծեալս 'ի նմանէ եւ 'ի սեղանոյ նորին հաւաքածոյ հնութեանց, յեռեալ զայս պրակ հայրենաճառ տառից, ըղձացայ նմին ինքեան առաւօտողին ինձ կենաց՝ յերեկոյացեալս պահու՝ (նորին կենդանագրաւ սկզբնազարդեալ), ձօնել եւ վերագրել զմեծ նորայն սիրելութիւն Սիսուանայ դիտելով՝ քան զարեան եւ զբնութեան. եւ այսու՝ վարկանիմ ամենեցուն իսկ համազգեացս հայրենասիրաց նուիրել զայս վաստակ, զայս խայրի անազանի. եւ փոխարէն, յետ ներողամտութեան * խնդրեմ (եթէ ժտիցիմ եւ յայս) յորոց ունիցին, ընծայել 'ի լոյս՝ որոյ եւ է ձեռօք, զորպիսի եւ է յիշատակարան եւ ծանօթութիւն՝ յաւելիչ աւանդելոցս 'ի մատենիս, որովք՝ համարիմ մէն մի'համգոյցս լուծանել յառեղծուածոյ եռադարեան տեւողութեան վերջին հարստութեան Հայկազնեայցս 'ի Սիսուան. համարիցին եւ ինքեանք առնել զայս շնորհ՝ նախ ինքեանց իսկ, եւ ապա իւրեանց ազգակցաց եւ ապագայից, քան եթէ թելադրողիս, որ այսուհետեւ խոնարհի համբուրել զանզբաղասէրն լռութիւն։

* *Ցայս միտս իմասցին եւ Վրիպակքն գրչի կամ տպագրութեան՝ սպրդեալք 'ի մատենիս. յորոց է ինչ զի փոխեցան 'ի Ցաւելուածին եւ յՈւղղագրութիւնս, եւ է որ նշանակեսցին աստանօր, զանց արարեալ զմանունսքն եւ զչնչիննեաք։*

Ցէջ 9, *սիւն բ. Թուականն* 1867՝ *ընթերցցի* 1837.
— 33, *ա. բազմատիկ. — բազմապատիկ.*
— 63, *ա. յամի* 1347. — *յամի* 1337.
— 70, *ա. էլ Գէյֆ. — էլ Գէհֆ.*
— 75, *բ. 'ի ծան. զերկրորդ դուստրն. — զերրորդ.*
— 121, *ա.* Anemone blonda. — Anemone blanda.

Ցէջ 232, *ա. տող Է.* 1127. — 1129,
— — *բ.* 1264. — 1269.
— 239, *ա. 'ի ծանօթ. յէջ* 160. — *յէջ* 169.
— 358, *ա. Մեւոն. — Նեւոն.*
— 484. *բ. յետ երրորդ տողին՝ բանն՝ դուստր Կոստանդնի, ուղղելի է յաւելուածով, դուստր Հերմոյ որդւոյ Կոստանդնի.*
— 489, *'ի ծան. Ըմպանակ պղընձեայ. — արծաթի.*
— 544, *ա. անուն կնոջ Ե Լեւոնի փոխանակ Մարեմայ՝ գրեսցի Մարգարիտ.*
— 569, *գ. Անտիոք...* 490-50. — 490-503.



նաձև ցամաքն այն, այլ գէթ զկէս մասնն արևելեան՝ զհարաւագոյն կէտ համօրէն փոքուն Ասիոյ, որ է առ Անամօռ հրուանդանաւ[1]: Իբրև հինգերորդ մասն բուն արևելեան ծովափանց Միջերկրականին վիճակեցաւ Հայոց, 'ի բնութենէ իսկ այնպէս իմն սահմանեալ. քանզի Ամանոսեան լերինք պարսպեն զանձուկ զայն ծովակողմն, յարևելից հիւսիսոյ ձգելով ընդ արևմուտս հարաւոյ, և յանգեալ առ Հռոսիկեան հրուանդանաւն, զոր Արաբացիք կոչեցին Ռաս-էլ-Խանզիր (Խոզի-գլուխ), ըստ որոց և մերքս՝ Ռասխանձիր:

Արևելեան հիւսիսային սահմանք իշխանութեանն և երկրիս Հայոց՝ քան զայլսն փոփոխունկք եղեն. քանզի երբեմն, յաւուրս Հեթմոյ Ա, տարածեալ հասանէին մինչ գրեաթէ յափունս Եփրատայ, առ Հռոմկլայիւ, այլ յաճախ ոչ անդրագոյն քան զգետահովիտ Ջահանայ, և ոչ 'ի բաւանդակն սորին. քանզի առանձինն աշխարհ կամ նահանգ էր Ջահան, որ և Մարաշ կամ Գերմանիկէ, դուն ուրեք ըստ մասին անկեալ 'ի բուռն Ռուբինեանց: Աստուստ դառնալով յարևմուտս, բնական սահմանք կողմանց հիւսիսոյ և արևմտից՝ ակն յանդիման կանգնեալ կան երկայնաշար կամարաձև գօտիք Տաւրոսական լերանց, զարդիս 'ի հասարակի կամ մեծագոյն մասամբ Պուլղար տաղը կոչեցեալք, որք նոյնպէս և 'ի հնումն սահմանք համարէին Կիլիկիոյ. թէպէտ ձգեցաւ երբեմն ձեռն իշխողաց մերոց և յայնկոյս լերանցն՝ 'ի վերին անձուկ հովիտս Սարոսի և Ջահանայ, ուրանօր և հռչակեալն յայժմուս Զէյթուն վիճակ: Ոչ զսա միայն՝ այլ և զոր ընդ արևելս նորին են վիճակք մինչև ցԵփրատ գետ՝ այժմեան սովորութիւն մերայոց ախորժէ 'ի Կիլիկիայս համարել. իցէ այսպէս ըստ եկեղեցական տեսութեան, ընդ Սսոյ կաթողիկոսին գոլով իրաւամբք, այլ ոչ ըստ իշխանութեան տեարց Սիսուանայ: Յեղափոխեցան և արևմտեան սահմանք երկրի սոցա, զոր դիպողագոյն է փակել նոքիմք Պուլղար լերամբք՝ մինչև 'ի ծովեզրն, ուր սկիզբն կամ աւարտ նոցին: Բայց և առ հնոյն վէճ էր զայսր կողման սահմանաց Կիլիկիոյ. ոմանց ընդ մէջ Կոռիկոսի և Սելևկիոյ հատանելով, այլոց ձգելով յԱնամօռն հրուանդան, և կիսոց անդրագոյնս՝ ցԿոռակեսիոն, այժմեանս Ալայա. յորմէ ցԴրունս Ասորւոց ընդ արևելս կամ ցեզր Հայոց Մոցոյն՝ իբր 200 մղոնք են ուղղագիծ: Սեփականք Հայկականիս Կիլիկիոյ համարէին ոչ սակաւ ժամանակս՝ և մասունք աշխարհաց Իսաւրիոյ և Լիկաոնիոյ. որպէս, Տիանա (Գիլիսէ-հիսար), Նիկտէ և Առակլի կամ Կիւպիստռա, մինչև 'ի Լարանտա (Գարաման), զոր և յաւուր նուաճման՝ կանխէր երբեմն Մեծն Լևոն խոստանալ 'ի պարգև Խուշակիր ասպետաց դաշնակցաց իւրոց: Վկայէ վասն սորա զուգակիցն իւր մեծութեամբ՝ ըստ այլ շնորհաց՝ Լամբրոնացին Ներսէս, թէ «Ընդարձակեաց զՀայաստանեայս՝ թագաւորի Լևոնի
» ձեռն, որ 'ի Կիլիկեայս և Ասորւոց գաւառացն տիրէ,
» և... կարողացաւ Երկրորդ Կապադովկիոյ՝ յորում մայ-
» րաքաղաք Տիանայ »: Սա ինքն դարձեալ Ներսէս տասնամաւ յառաջ յայլում յիշատակարանի՝ գրէր վասն Լևոնի, թէ « Ի սոյն ժամանակս էր իշխող Կիլիկիոյ և Սաւ-
» րիոյ և Լերանց սոցին »: Շատասցի այսքանս 'ի յայտնել թէ այլ սահմանք էին հնոյն և այլ մերոյս Կիլիկիոյ:

# ԲՆԱԳՐՈՒԹԻՒՆ

2. ԼԵՐԻՆՔ ԵՒ ԿԱՊԱՆՔ. — Ի վաղուց և յանյիշատակ ժամանակաց՝ ըստ բնութեանն երկակի դիմաք և անուամբք ծանուցաւ երկիրն Կիլիկիոյ, Դաշտային և Քարուտ. առաջինն՝ հարաւային արևելեան մասն է երկրին. երկրորդն՝ արևմտեանն՝ հովիտ Կալիւկադնոս գետոյ կամ Սելևկիոյ: Սա՝ թէպէտ չէ յոյժ բարձրաբերձ հանգոյն հիւսիսային լեռնավայրին, այլ անհարթ առապար 'ի հասարակի, վասն որոյ և այնպէս իսկ կոչեցաւ, Τραχῖα կամ Τραχιῶτις ըստ Յունաց, Cilicia Trachea ըստ Լատինաց. և բազումս ունի լերինս և բլուրս անջատս, այլ և պարակից գօտի մի քան մղոնաւ կամ թէ ևս նուազ տարակաց 'ի ծովեզերէն, 'ի հիւսիսոյ արևմտից ձգեալ ընդ հարաւ արևելից, 'ի հանդիպոյն Կոռակեսիոնի մինչև մերձ յԱնամուռն հրուանդան, ըստ ոմանց Իմբարոս կոչեցեալ 'ի հնումն (Imbarus). ըստ որոց և հուպ 'ի ծովեզրն ամբառնայ քարաբլուրն Կրակ (Κράγος), և հանդէպ նմին՝ զուգակիցն Անտիկրակ[2] (Αντικράγος), ընդ մէջ Սելինունեայ և Քարադրոսի (Գարատաշ): Յելից կուսէ Իմբարոսի խնդրելի է Անդրիկոսն նախնեաց (Andricus mons), և յելից հիւսիսոյ՝ Արիմակոոս, առ համանուն գետով, և այլք ոչ նշանաւոր լերինք մինչև 'ի գետն Սելևկիոյ. յորոյ յահեկէ՝ որ է յարևելից՝ առասպելախառն լեառն Արիմայ, զոր տեսցուք և յետոյ 'ի տեղագրութեանն: Աստի և անդր ընդ արևելս մինչև 'ի սահմանս գաւառին Տարսոնի՝ բարձրաւանդակս նուազունս ունի երկիրն, որ տակաւ զիջանի 'ի Դաշտագետինն:

Այլ բուն և հարստագոյն բարձունք Կիլիկիոյ՝ են գերահռչակ Լերինք Տաւրոսի. որոց և պերճագոյն մասն

[1] Ապուլֆէտա արաբ աշխարհագիր 'ի սկիզբն ԺԴ դարու՝ զծովային սահմանս Հայոց դնէ ընդ մէջ Աղեքսանդրեկի և Կոռիկոսի:

[2] Որիշ են 'ի սոցանէ Կրակն և Անտիկրակ Լիւկիոյ աշխարհի, և Նեղքին Կրակայն մերոց պատմչաց, որ յետոյ յիշեսցի:

*բոլորեալ կարակնէ զհիւսիսային սահմանս աշխարհին, գօգձիր և զարևելեանն. քանզի երկարաձիգս այս և մեծ գօտի լերանց, (զոր մարթ իսկ է սեփականել բովանդակ աշխարհիս Հայաստանեայց, ըստ ճահողակի կոչման Մխիթարայ Գօշի, Տաւրոս 'ի Միջահայս), սկզբնաւորեալ յափանց Լիւկիոյ՝ յարևմտից հարաւոյ խաղայ ընդ արևելս հիւսիսոյ, անջրպետելով զՓռիւգիա 'ի Պամփիւլիոյ, և ընդ սա*[1] *և ընդ Իսաւրիա անցեալ՝ բաժանէ զԿիլիկիա 'ի Կապպադովկիոյ, բազուկ մի երկար ձգեալ ընդ արևելս հիւսիսոյ 'ի Փոքր Հայս՝ մինչև 'ի սահմանս Պոնտոսի, որ կոչի Անտիտաւրոս. և ոստ մի ևս ոչ կարի երկար՝ այլ անընդհատ՝ յարևելս կոյս Ծոցոյն Հայոց. այն է հռչակեալն Ամանոս, ընդ մէջ արևելեան Կիլիկիոյ և Ասորւոց: Իսկ բուն իրան Տաւրոսական լերանց ընդ մէջ երկոցուն բազկացս կամ հատուածոց՝ ուղղագոյն խաղայ յարևելս, ընդ Ջահան աշխարհ և ընդ Գ Հայս, և կըտրեալ յԵփրատայ՝ ընդ Դ Հայք (որ 'ի Մեծ Հայս), ընդ Աղձնիս, Կորճայս և Մոկս մինչև 'ի Վասպուրական, կամ յեւս սահմանաց Հայոց, ուր և դադարէ բնիկ Տաւրոսի կոչումն. թէպէտ և հատ ընդ հատ ձգին լերինքն անդրագոյն ևս 'ի Պարսկաստան, և մինչև 'ի Հնդիկս: Ոչ յայս հեռաւոր աշխարհս միայն գոն հարթագոյն միջոցք, այլ և 'ի մերումս իսկ յայսմ աշխարհի, ուստի կուռ և կարկառակոյտ ամբառնան իբրև միջին իրանք զանգուածոյն, ոչ խպառ միապաղաղք որպէս զԿովկաս և զԱլպեայս, այլ անցս տալով գետոց օժանդակացն Սարոսի և Ջահանայ, որպէս թէ յուժեղագոյն ծննդոց բնութեան յաղթահարեալք. այլ ընդ նոսին բանան և անցս գնացից մարդկան՝ որ կամիցին յԱսորւոց կողմանէ երթալ յարևմտագոյն Ասիա, կամ աստուստ յարևելս. այնքիկ են Կապանքն և հռչակաւոր Դրունք Կիլիկիոյ, Հայոց և Ասորւոց, զորոց և յետ սակաւուց լիցին բանք:*

*Թէպէտ ոչ միով նոր անուամբ կոչին լերինքս, որպէս 'ի հնումն՝ Տաւրոս, ձգեալք իբրև ընդ 200 մղոն յերկայնութիւն, այլ երեք գլխաւոր գօտիք համարին նոցին. Ա. Պուլղար տաղը, որ և արևմտեան և թանձրագոյն մասն է բնալերանց՝ ընդ մէջ Լարանդայ և Առակլեայ 'ի հիւսիսոյ, և գաւառին Տարսոնի 'ի հարաւոյ. և կոչի այսպէս յանուն Բուլղարաց այսր վտարելոց յերկրէ իւրեանց, 'ի ձեռն կայսերաց Բիւզանդիոյ. Բ. յարևմտից հարաւոյ սոցին՝ Տիւմպէլէկ տաղ (Թմբուկ լ. 7000'), և անդր քան զայն Կիւկլիւք, Կէօք տաղ, Մուսմաք, և այլն, մինչև 'ի հովիտս Սելևկիոյ. Գ. Ալլահ տաղ կամ Այա տաղ, ձգեալ ընդ մէջ Տիանեայ և Նիկտէի՝ յարևմտից, և Սարոս գետոյ յարևելից. բարձրագոյն լեառն 'ի սմա ճանաչի Ապիշ-քար (Apisch-kar): Գլխաւորն այն և միջին լեռնագօտի Պուլղարայ՝ ոչ միայն բարձրագոյն է քան զայլս, այլ և միախուռն ողնայարեալ ամբառնայ 'ի վերոյ քան զբարձրատափ երկիրն և զերկուստեք լերինսն՝ այլ ևս 2000', համակ քարակարկառ միատարր պարսպաձև, ամենևին անբոյս անարօտ, ահեղ իմն կերպարանաւ. յարևելակողմն բացագոյն ունելով միայն զՔօշաճ լեռնանցս յ'9400' բարձու, և ևս բացագոյն 'ի Մտ. առ Կէյիք-բէփէ (Եղնասար) լերամբ սուղ. ինչ լայնագոյն անցս՝ որ տանի յԱռակլի: Խուռնք և կատարք նորին առանձնակ անուամբ՝ սկսեալ 'ի յետին յիշեալ լեռնէդ (Կէյիք-թէփէ 10,000') են մի ըստ միոջէ՝ յարևմտից յարևելս ձգելով մահկաձև, Գարկա տաղլարը (Ագռաւաշար լերինք) 9000', այսպէս կոչեցեալք վասն յոլովութեան ագռաւուց 'ի նոսին բունելոց. Ուզունճի? տաղլար 9000', յոյժ ապառաժ և սեպ. Պայմազ, 10000', բրգաձև, խոնարհեալ 'ի Հր., Ճօյսին? (Dschoisin) 10000', սրակատար սեպացեալ 'ի Հս. զիջեալ տարածեալ ընդ Եւ. և Հր. սմա կից է բարձրագոյնն ծանուցեալ սար համօրէն կիլիկիական Տաւրոսի՝ Մետտէսիզ՝ 11000', բրգաձև եռակողմն. հիւսիսակողմն՝ 2000' ստորև գագաթանն՝ պարսպաձև կերպանայ. — Ջօպանգույու (Հովուաց հոր) 10800', ցցուեալ ընդ Հս., Արփալըգ, 10800', սեպացեալ ընդ Հս. լայնատարած 'ի Հր. կոյս. — Թէօքէ քէօփրիւ, 10500', զիջեալ ընդ Մ. ուր ընդ սա և ընդ Քօշաճ 10000', են վերոյիշեալ լեռնանցքն. լայնանիստ է և Քօշան ստորիջեալ 'ի հովիտ Կուսկութայ գետոյ, սպիտակ զաճաքարուտ: Յելից սորա ձգեալ ընդ Հր. երկայնանիստն Բիւզկեար տաղ (Հողմոյ լ.) յ'9000 ոտից խոնարհի ց'7000', և աւարտէ զլեռնապարն՝ յարևելից կողմանէ: — Այս միատարր պարսպաձև բարձունք են վերջին կամ երրորդ գահաւանդք լերանցս Կիլիկիոյ, ամենևին մերկք և ապալերկք, 'ի ստորոտսն ունելով ձիւնակոյտս, իսկ 'ի վերագոյն քան զ'10000' վայրս՝ յաւերժական սառամանիս: Ց'9000' բարձրութեան՝ տակաւին տևէ ձիւն ցյուլիս և օգոստոս ամիս. անտի ց'6000' է միջին գահաւանդն, յորմէ սկսանի բուսաբերութիւն, նախ 'ի խորշս և 'ի զերծ տեղիս քարաժեռից, և ապա ըստ ստորիջմանն՝ տակաւ բարգաւաճելով յոյժ հարուստ և ծաղկաւէտ երևի: Ի 6000 ոտից և 'ի վայր ց'3000 է առաջին գահաւանդն, որ և անտառավայր. այլ մինչև 'ի 3500' հատուանայ և զարի: — Այս առաջին գահաւանդ (միջոց 3500-6000' բարձրաւանդակի) անտառաստահման, հնգեքումբ քամակօք կամ ողնայարօք ձգելովք 'ի ստորոտից միջին գահաւանդին ընդ հարաւ, տրոհի 'ի լեռնահովիտս ընդլայնեալս տակաւ ըստ իջիցն 'ի դաշտակողմն, 1500-2000' բարձամբք յերեսաց լեռնահովտացն. հոծեալ հարուստ մայրեօք իբրև չորից ժամուց ճանապարհի թանձրութեամբ: Առաջին քամակն՝ սկսանելով յարևմտից, անջրպետէ զառաջին վտակս Կիւդնոսի. անդ է Գարադափու (Սեաւ դուռն) կոչեցեալ կածան՝ յ'8200' բարձու: Երկրորդն՝ յելից առաջնոյն 'ի միջի Քափուճիկ չէրի ? և Աղած-քիսէ վտակաց, յորում Իւչ-բէփէ 10000' բարձր, 'ի հարաւոյ և կից ստորոտից բարձուն Մէտտէսիզի. 'ի ստորև՝ Քէչի պէլի (Այծամէջք) համեմատաձև պարարտարօտ, 8600'. Գար-կէօլիւ (Ձիւնալիճ), զի են 'ի գագաթանն մանր լճակք, 8800'. Պաչ օլուգ 8200', բրգաձև. Տէվէ-բէփէ 7100-6500', խոտաւէտ, յարևմտից կալով Կապարահատիցն, և 'ի հարաւոյ ունելով զլեռնակն Իճէկ-բէփէ: — Երրորդ քամակ է ընդ մէջ Աղաճ-քիսէ և այլոյ օժանդակի՝ որ 'ի սկզբան կոչի Մէճէվլէ սու, և ակունքն են յ8200'. ընդ մէջ սորա և Քէչիպէլի լերին ամբառնայ*

[1] Ապուլֆէտա աշխարհագիրն վերոյիշեալ զլերինս ծովակողմանցս՝ Գարամանեան Թուրքմանից լերինս կոչէ, Ճէպէլէլ-Թուրքմէն:

Պուզ գայա (Սառնասար), 8300′, քանզի յաւերժական սառամանիք են 'ի սահմանս նորին, և ճանապարհ որ իջուցանէ 'ի կապարահատսն Կիւլէկ մաղարա կոչեցեալս, առ որով Ջիտեմ կեօյի լճակ, 7300′, և 'ի ստորև Էրձէ-կետիկ, 5500′, դալարաւէտ սար: — Ընդ մէջ գետակիս և Կուսկութայ գետոյ օժանդակի' է չորրորդ քամակն կտրեալ 'ի նմին գետոյ. 'ի վերնակողմանն են ապառաժուտն Տէյիկ գայա (Ծակքար) 9500′, Դաւօլուզ 8100′, բրգաձև մեկնակ սար, Ջայըր կետիկ, 8450′, առ որով անցանէ լեռնուղին, յելից միւսոյ ևս անցից Գարըը պօղազ կոչեցելոյ 'ի 6250′ բարձու: — Հինգերորդ քամակն է ընդ մէջ Կուսկութայ և Սարոս գետոյ, 'ի հարաւոյ Հօղմոց անուանեալ լերանց, զնստագոյն քան զայլսն, ոչ ունելով նշանաւոր ինչ բարձունս: Ի սպառուածոյ առաջնոյս այսր գահաւանդի ցդաշտաբերանն' երկոտասան ժամուց ճանապարհ է, անտի մինչև ցծովեզրն' հինգ ժամուց:

Ի հիւսիսոյ մեծի Կիլիկեան լեռնապարուս' իբրև զուգահեռական նմին ձգի փոքր պար մի լերանց' ոչ միայար. որոց արևմտեանն կոչի Էօքիւզ-կետիկ (Եզնանցք) 9000′, միջինն' Գզըլբէփէ 8500′, զի կարմրագոյն և Թխագոյն երևի երկաթային մասամբք և հրաբղխեայ կազմութեամբ. արևելագոյնն է լեռնավայր Պուլղար-մաղարա բովուց, 8400′: Ի միջոցի կրկին լեռնապարուցս' տարածանի հարաւային հովիտ Էլխօճա գետոյ' քաջ խոտաւէտ և ծառաւէտ: — Ցայնկոյս Սարոսի կամ օժանդակի նորուն Քօրքուն գետոյ' ամբառնայ երկայնանիստ բարձր լեառն Ալտաղ, 3000′ 'ի վերոյ քան զլեռնահովիտն. 'ի Հր. նորին և յԵԼ. Դրանցն Կիլիկիոյ ձգին Հաչին լերինք, յորոց 'ի միում բարձր գագաթան կառուցեալ կայ Անաւա բերդ, յոր անուն և լեառնն կոչի:

Այս միջավայր համօրէն լերանցս' յորում են գերահռչակ Դրունքն Կիլիկիոյ' որ է ըստ մերայոց Կապանն Կուկլկայ, Թուի արժանապէս կոչելի ըստ հնագունից ևս մերայոց, յորոց մի և Ս. Ներսէս Լամբրոնեցի [1], Գահն Կիւլիկիոյ, ուրանօր և խիտ առ խիտ գուշակին 'ի հնումն եղեալ պահակք և բերդք և աշտարակք, զոր օրինակ և յայժմուս են ինչ ինչ նշանաւորք, որպէս տեսցի 'ի յետագայդ. և զդիրս նոցին ակն յանդիման արասցէ տեղացոյց պատկերն Բարձանց և Բուսոց, ըստ աջողագոյն քննութեան և գծագրութեան Քոչի բուսաբանի Աւստրիացւոյ:

Եւ զի այսքան խուռն լերինք և հովիտք' բաւղաձև խիճ գործեն զվայրսն, հարկ էր ոչ ընդ մի միայն տեղի և ընդ մեծ Դուռն (Կիլիկիոյ) հուն ճանապարհի խնդրել, այլ ընդ այլ և այլ կողմանս. և զայս նշանակեն արդ Թուրքք պէսպէս կոչմամբք անցատեղեաց, Գափու, տէրպէնտ, պէլ, պօղազ, օլուգ և կետիգ. այսպիսիք են, զատ 'ի վերոյիշեցելոցն, Գարա-գափու յարևմտակողմն Հարաւոյ, որ տանի 'ի Տանձուտ ? (Tensyt) և 'ի Գանձէ գիւղաւ. Դաւօլուզ և Գարըը պօղազ' 'ի միջակողմն, Ջայըր կետիգ ոչ հեռի 'ի նոցանէ. Էրձէ ? կետիգ ընդ մէջ մեծի պահակին և Կիւլէկ մաղարայ բովուց. Էյմալը օլուգ 'ի հովտին Կուսկութայ. Ջարալ օլուգ 'ի սահմանս Կուկլկայ. Տէկիրմէն պօղազ և Քեօփրիւ տէրպէնտ 'ի հովտին Գըրգկէչիտի. հանդերձ այլովք' որք հետևակագնացից մենաւորաց կամ տաւարածից միայն են անցանելիք: Փոքր մի լայնագոյն քան զոսա է Գարա-բէամզ ? պօղազ, կածան ընդ մէջ Պուլղար և Տիւմպէլէկ լերանց, որ ընդ հովիտն անուանեալ (Բամբակաձոր) Բամպուք տէրէսի' իջուցանէ 'ի դաշտն Տարսոնի: Են և յայնմ կուսէ լերանցն, այն է յարևմտից, նման սոյին լեռնանցք, որպէս Գարասէքիզ պօղազ որ հանէ 'ի Լարանտա. և միւս 'ի հարաւոյ նորին ընդ մէջ նախայիշեալ Եղնասար և Ագռաւասար լերանց, որ հանէ 'ի կողմն Առակլեայ, և Թուի ինձ կոչեցեալն 'ի մերոց պատմչէ փող Եկեղեցեաց: Նոյն պատմիչ' Կապան Պառանդոյ կոչէ և զանցսն' որ իբր 10 կամ 12 մղոնաւ միայն կշիռ 'ի հիւսիսոյ կայ մեծի Կապանին Կուկլկայ (Կիւլէկ պօղազ), յոր և հանէ ընդ հարաւ. իսկ ընդ արևմուտս խաղացեալ' ըստ ը Թայից Ջագըտ գետոյ օժանդակի Սարոսի' անցանէ ընդ Տաւրոս և հանէ 'ի սահմանս Իկոնիոնի: — Ցարևելից հարաւոյ սորին սակաւուք 'ի բացէ են նեղուցք Պէյլէմէտէք պօղազի կոչեցեալ. և ուղղակի ևս ընդ հարաւ' մերձագոյն 'ի մեծ կապանն քան 'ի Պառանդոյն' կիրճն Թէքիր կոչեցեալ: — Հնագոյն 'ի պատմչաց մերոց յիշողաց կապանիցս, Սերիոս, «Նեղուց մտին Կիլիկիոյ» կոչէ, զոր հնագոյնքն Հեղլենք և Հռոմք Դրունս Կիլիկիոյ կամ Տաւրոսի կոչէին: Այլք' այլով ևս օրինակաւ' հանգոյն արևելեայց' փող կոչեն զանձկագոյն' Թերևս և զկարճագոյն անցս. որպէս վերոյիշեալդ Եկեղեցեացն, և փողն Մոյևունի [2]. իսկ երկարագոյնքն' Խողովակ (օլուգ), որպէս կոչէ արքունի պատմիչ մեր' խողովակ տեղի մի մերձ 'ի Մանիօն, 'ի սահմանս Լարանտոյ: Եւ զի խոտորկտուր և բազմաչրջան լինին ոմանք 'ի կածանիցն' ճահողակի ումիօրէն Անգմնցուկ կոչին. որպէս ասէ Մաղաքիա ժամանակագիր, ընդ այսպիսի անցս եկեալ Իսմայելացւոց 'ի Սիս' յամի 1373. և 'ի դէպ է համարել զայն անուանեալն 'ի Մագրիզի պատմչէ [3] Տէրպէնտի-Մ'ա: Նոյն պատմիչ արարացի յիշէ և այլ կածան մի յանուն Հռոմոց, Տէրպէնտ-էլ-Րում, որ Թուի կապանն Պառանդեայ, կամ այլ կապան յարևմտակողմն ևս. յայսմ կողման յիշի 'ի Նոր ուղևորաց և Գարկա-կէչմէզ (Ագռաւուց անանցանելի) 'ի ստորոտս Պուլղար լերանց յԱռակլի կոյս. և այլն: Այս ամենայն կապանք և նեղուցք են 'ի Գահս Կիլիկիոյ, յարևմտակողմն և 'ի հիւսիսոյ աշխարհին, որոյ 'ի հռչակաւոր անցից և Դրանց Կիլիկիոյ և Ասորւոց' որք յարևելակողմն յայլ լերինս:

3. ԱՆՏԻՏԱՒՐՈՍ ԵՒ ԱՄԱՆՈՍ ԼԵՐԻՆՔ. — Ի հիւսիսոյ բնիկ սահմանաց Կիլիկիոյ, և մօտագոյն յարևելից հիւսիսոյ Ալատաղ գօտւոյն' ձգին Անտիտաւրեան լերինք

1 Զյթարգմանութիւն մեկնութեան գրոցն Ցայտնութեան ասէ յերիւրեալ 'ի Ս. Գէորգ անապատի, «'ի մէջ լերինս Տօրոսի, որ է 'ի Գահ Կիլիկիոյ և 'ի սկիզբն Պամփիւլեայ»: — Ցովհաննէս Արքայեղբայր վասն Գռներ անապատի իւրոյ ասէ. «Ի Գահս Կիլիկիոյ, 'ի գաւառն բերդին Բարձր ասացելոյ»: Եւ գրող վարուց Լամբրոնացւոյն' առ նորին կենդանեաւ, վասն Ռուբէնի նահապետի իշխեցողաց երկրին' ասէ, «Դիմեաց յարևելից, եկն 'ի սահմանս Տարսոնի 'ի Գահ Կիլիկիոյ»:

2 Այս 'ի Սամուէլի ժամանակագրութեանն յիշի:

3 Մագրիզի, Փռանկ Թարգմանութիւն, Ա. Բ. 60-65:

տողանի, թէպէտ ոչ անընդհատ, 'ի մէջ կրկին երկարեալ առաջից Սարոս գետոյ, և արտաքոյ՝ յաՀեկէն, այն է ընդ մէջ Գամրաց՝ յարևմտից կուսէ, և Ալպստանայ և Գ. Հայոց՝ յարևելից։ Միջագետեայքն այն լերինք՝ 'ի հարաւոյ գնալով ընդ հիւսիս՝ են Պաքըր տաղ կամ Կէտիմ պէլի, Քօզան տաղ, առ որով մակաղատեղք համանուն հզօր տոհմի Աֆշարաց կամ Թուրքաց, 'ի հիւսիսոյ Հաճնոյ. Պէյ տաղ, Գզըլ տաղ, Սըղլան տաղ, Քարրան տաղ, Քէօշլէր?, Ճախլաղան, Խըրնզիր տաղ, և այլն։ Իսկ արտաքոյ գետամիջացն՝ յաՀեկէ Նորին Սարոսի և զուգահեռական նմին՝ ձգի երկարաշարն Պինպուղա լեառն, ունելով 'ի հիւսիսոյ արևելից զկէօք-տիլի? յարևմտից Կիւրեւն վիճակի։ Այսոքիկ և որ այլ ևս լերինք Անտիտաւրոսի՝ չեն բարձրաբերձք, այլ որչափ ինչ քննեալ է կամ կշռեալ ակամ տեսութեամբ՝ հազիւ 'ի կէս բարձրութեան հսկայից Տաւրոսի հասանեն։ Այսպիսիք թուին և որք յելից հարաւոյ սոցին են լերինք ընդ մէջ Հաճնոյ, Ալպըստանայ և Մարաշոյ, յերկոսին կողմանս Ջահանայ և 'ի հովիտս նորին. զոր օրինակ, Քէրմէզ՝ սակաւուք հեռի 'ի Հր. Ելից Հաճնոյ, առ գետով Կոկիսոնի, և Պարատուն թերևս նոյն ընդ Պրիտ որ 'ի սահմանս Զէյթունի։

Իսկ անջրպետքն Կիլիկիոյ յԱսորւոց՝ են Ամանոս լերինք՝ շրջապատեալք զարևելեայ եզերբ Ծոցոյն Հայոց, և ձգին ընդ Հս. Ելից, հասարակօրէն կոչեցեալք Սեաւ լերինք, այժմ Կեավուր տաղի. իսկ առանձնակի՝ հարաւագոյնն մասն՝ որ և զՀրուանդանն Ռաս-Խանձիր գործէ՝ կոչի Ճէպէլ Մուսա, միջինն՝ Գզըլ տաղ, հիւսիսայինն Արմա տաղ. սոքա ևս չեն կարի բարձունք, այլ թուին բարձրագոյնք քան զԱնտիտաւրեանս, և ունել կատարս զ'6500' կամ 7000'։

Ի սոցա միջի են Ամանոսեան դրունք, ոչ մի՝ այլ երրեակ կամ աւելի. որոց Ա. արևմտագոյն 'ի Հս. Ել. Այասայ, Գարա գափու կամ Տէմիր Գափու կոչեցեալ զարդիս, և յոմանց յատկապէս Կիլիկեան դուռն համարեալ. Բ. յատուկ Դուռն Ասորւոց առ Խոսոսիւ, սակաւուք 'ի հիւսիսոյ Աղեքսանդրեկի, յորոյ անուն ևս կոչէ Մագրիզի [1]. զարդիս կոչի Սագալ-բուրան. 'ի հարստութեան մերազնեայցս կոչէր սոսկապէս Դուռն կամ Դռնակ, Portella, և այլ ևս անուամբք, զորս նշանակեսցուք 'ի կարգի տեղագրութեան. Գ. 'ի հարաւոյ սորին ընդ մէջ Պէյլանոյ՝ և Պաղրասայ, յանուն յետնոյ կոչեցեալ և արդ Պաղրասպէլի, և վասն մերձաւորութեանն 'ի քաղաքն մեծ՝ Դուռն Անտիոքայ [2]։ Միւս ևս անցք 'ի հիւսիսոյ սոցին՝ այլ ոչ քաջ ճշգրտեալ՝ համարին 'ի սահմանս Սարուանդիքարի կամ Անաւարզայ։ — Հին աշխարհագիր մեր (Խորենացի) ըստ Պտղոմեայ՝ ասէ, Կիլիկիոյ «Երկու դրունք, Մայիս և Պլատան ելանելոյ յԱսորիս». այժմեան քննիչք հեռագոյն առ ծովեզերբն ճանաչեն զտեղիքս, (Μαλλός և Πάλτος կամ Πλάτος). զմին՝ առ գետաբերանով Ջահանայ, զմիւսն անդր քան զսահմանս Հայոց, 'ի ծովափունս Ասորւոց հանդէպ Արատոս կղզւոյ։ — Ընդ բնական կապանացս յիշեցի աստանօր և որ առ մեօք ճարտարութեամբ բացեալ լեռնանցուք անցքն 'ի Պուլղար մաղարայէ ցԿիւլէկ մաղարա, յ'8000' բարձու, որ և աստի անցեալ ընդ Քօշան Նեղուց 9400' բարձր՝ իջուցանէ 'ի կապանն Կուկլակայ։

Ի հանդիպոյ պարու Ամանեան լերանց, ընդ մէջ արևմտեան ափանց Հայոց Ծոցոյն և Ջահան գետոյ առ Մասաւ, ամբառնան լեռնաբլուրք ոմանք, յանուն քաղաքին կոչեցեալք Ճէպէլ Միսիս, յորս բարձրագոյն կատար ճանաչի Ճէպէլ-իւն-նուր (Լուսոյ լեառն) 716 Ձ։ Երկժամու հեռի 'ի Հս. սորին ձգի Հարէմի լեառն. 'ի հարաւոյ Մս. Ճաֆար կամ Ջաֆար-տէտէ, և 'ի գետն կոյս՝ Սէքիլ. և Տանտի. ընդ մէջ սոցուն և ծովածոցոյն՝ Հաւտէ լեառն 608 Ձ. բարձր։ Իսկ 'ի Հս. կուսէ Նուրի և յԵլ. Հս. Մասայ՝ երկայնաշար այլ ոչ անընդհատ գօտի Տիւյտիւլ լերանց, որք 'ի Մեծ և փոքր զանազանին. և ասին հրաբղխային ունել զօրութիւն, և երբեմն աւուրս 'ի տարւոջ ծուխ և ձայնս արձակել. բայց գիտնական ուղևորք ոչ յիշեն այսպիսի ինչ, թէ և քաջ քննեալ չեն սահմանքն. բարձրագոյն կատար նոցին թուի իբր 7000', շատք ոչ աւելի քան զ3000' համարին։

Այսոքիկ են պարք և կոյտք լերանց Կիլիկիոյ, որք՝ որպէս ասացաւ և տեսանի, աղեղնաձև իմն պարսպեն զերկիրն, զհարաւակողմն զերծ թողեալ գրեաթէ խապառ. զի թէպէտ և իցեն և 'ի Դաշտայնումն մանաւանդ յարևելակողման մասին Կիլիկիոյ՝ վերացմունք գետնոյ և ժայռք կրաքարուտք՝ այլ ցածունք են և ոչ ինչ նշանաւորք։

Ցոյցանեաց խուռն և բարձրաբերձ լերանց միջի բնակեալ մերազնեայց, չաւանդեցին մեզ զանուանս նոցին, կամ չհասին յիմ գիտութիւն. հազիւ զերկուց կամ զերից գտանեմ 'ի յիշատակարանս, այլ հասարակաբար կոչեն յանուն Տօրոսի. բայց զի ճանաչէին քաջ զդիրս և զչափս բարձրութեան սոցին, վկայ լիցի միոյ 'ի նոցանէ ասելն, յամի 1290, վասն ամրոցին Լամբրունի, եթէ «Նստի յառաջնում զահաւանդակի ահաւոր լերինն Տօրոսի». և զի կայ սա սուղ ինչ պակաս 'ի 4000' բարձու, որ է երիր մասն բարձրագոյն կատարաց Գահուն Կիլիկիոյ, ըստ այսմ երևի յերիս նախայիշեալ գահաւանդակս վերադրեալս որոշել զնոսին։ Նոյն գրիչ ճարտար որ և գիտնական, Ստեփանոս քահանայ Գոյներ Երիցանց, յիշէ 'ի նմին բանի և «զլեառն Արմէն որ հուպ կայ ելից անմատոյց ամրոցին Լամբրոնի», յորոյ թիկունս էր մենարան նորին 'ի համանուն անապատի։ — Մերձ յայս սահմանս է և Լեառն Պապառօնի՝ յանուն հզօր դղեկին, զոր յիշէ տէր նորին և պարզարան պատմիչ տանն Կիլիկեցւոց՝ Սմբատ Գունդստապլ։ — Միւս ևս անուն գտանեմ առ յիշատակագրի ումեք, յամի 1330, Տարկուչի լեառն, անյայտ դիրք, այլ թուի 'ի կողմանս Սսոյ. զի անդ գրէր յիշողն (Վասիլ սարկաւագ), և միայն ցաւագին իմն դէպս նշանակէ հակիրճ, զայրագին սրտիւ և բանիւ, աղաչելով յիշել այսպէս, «զմորքօրիկն իմ զԹեֆանուն, որ սրախող[3] եղեալ 'ի ճանբաՀն՝ 'ի գերեզ-

[1] Մագրիզի, Բ. Ա. 65. Բ, 985։

[2] Որպէս կոչէ և արքունական Պատմիչ մեր։

[3] Այսպէս էր 'ի բնագրին և ոչ կրկնակի սրախողխող գրեալ, 'ի յիշատակարանի անդ Մանրուսմունք եղանակաւոր դրոց։

» մանիմ, նաՀատակեցաւ 'ի ձեռաց չուն պըռ ? Ցարա֊
» պըկներոյն » ։

4 · ԲԱՐՁՐԱՉԱՓՈՒԹԻՒՆՔ · — Ստոյգ և ուսումնական արուեստիւ ոչ են ճշգրտեալ բարձրութիւնք լերանց և այլոց տեղեաց Կիլիկիոյ, այլ Հասարակ և Համեմատական գործեօք, կամ ըստ ական կշռելոյ, վասն որոյ և երկրայօրէն ընդունելի է ցուցակս յետագայ, զոր Հաւաքեմ 'ի Չիհաչեֆ և 'ի Քոչի տեղագրնեաց. յետինս' որ ստուգագոյն երևի' 'ի վիենական ոտս կարգեալ էր ըզչափսն. յորոշումն երկոցուն Հեղինակացն' զսկզբնատառ անուանց նոցին Չ և Ք նշանակեմ. իսկ որ սակաւ ուրեք Պ տառ' նշանակէ զՊերայ երկրաբան կամ մետաղաբան, որոյ չափք առաւել ևս Հաւանելի թուին.

| | Չափք (Mètre) |
|---|---|
| Մերսին. Ք. | 4 |
| Տարսոն. Ք. | 44 |
| Մսիս. Ք. | 73 |
| Ադանա. Ք. | 43 |
| Սոյ վանք. Ք. | 250 |
| Տիանա. Պ. | 900 |
| Լամբրոն. Ք. | 1250 |
| —— Չ. | 1500 |
| Կուկլակ բերդ. Չ. | 1600 |
| —— — Պ. | 1204 |
| —— գիւղ. Չ. | 1505 |
| —— — Ք. | 1290 |
| —— կապան. Չ. | 980 |
| Պոզանդի խան. Չ. | 1016 |
| —— Ք. | 852 |
| —— Պ. | 1540 |
| Փայտեայ կամուրջ Սարոսի. Ք. | 1416 |
| Անաշա գեօղ. Չ. | 812 |
| Չիֆտէ խան. Պ. | 744 |
| Կէնսին. Չ. | 1300 |
| Մէզար-օլուգ խան. Ք. | 695 |
| Կէօրիւմզէ. Ք. | 1296 |
| Պուռնասա. Չ. | 1678 |
| Կիւղնոսի աղբերակն. Չ. | 1650 |
| Գիւլը պօղազ մաղարա. Չ. | 1960 |
| —— Ք. | 1982 |
| Պուլղար մաղարա. Չ. | 2600 |
| Պուլղար մատէն. Չ. | 2098 |
| —— Պ. | 1615 |
| Պէրէքէթլի մատէն. Պ. | 1970 |
| Արփա ուչուրումու, Հանքք. Պ. | 1116 |
| Կիւլէկ մատէն. Չ. | 2111 |
| Հանքք Գզըլ-Թէփէի. Չ. | 2500 |
| Սունէտէրէ. Ք. | 1583 |
| Հովիտ Իւչթէփէի. Չ. | 3000 |
| —— Գար կէօլիւ. Չ. | 2500 |
| —— Կուսկութայ. Չ. | 2200 |
| Ուսկուհան պէլի. Ք. | 990 |
| Հաջին լեառն. Չ. | 1900 |
| Գըրլան պօղազ. Չ. | 1378 |
| Հորտուն լերին քամակ. Ք. | 721 |

| | Չափք (Mètre) |
|---|---|
| Գարա-սիվրի արօտք. Ք. | 1512 |
| Չօչ լեառն. Ք. | 2384 |
| Ելլան լերինք. Պ. | 1416 |
| Նուր լեառն. Ք. | 877 |
| —— Ըստ այլոց | 716 |
| Հաւտէ լեառն | 608 |

Քոչի' գյոգունց ևս լերանց, Հովտաց և աղբերաց բարձրութիւն' բոլորական թուօք նշանակէ յաւստրիական ոտնաչափս, զոր անդէպ Համարեալ վերածել 'ի բուն Չափս, կարգեմ ըստ նմին. ծանուցեալ միայն զի ոտն վիենական է 0,3161 Չ., իսկ ոտն Բարիզու' որով յաճախ վարիմ 'ի գիրս' է 0,3243 Չ.

| | Ոտն վիեն. |
|---|---|
| Մէտտէսիզ (լեառն) | 11000 |
| Չօպան գույու. Արփալըգ. | 10800 |
| Չէօք քէօփրիւ | 10500 |
| Քօչան. Կէյիկ Թէփէ. Իւչ Թէփէ. Պայմագ. Ճօյսին. | 10000 |
| Գարկա տաղլարը. Ուզունկի ? տաղլարը. Գարադաչ. | 9000 |
| Բիւզկեար տաղ | 9600 |
| Տէլիկ գայա | 9500 |
| Քօչան լեռնանցք. | 9400 |
| Գար կէօլիւ. | 8800 |
| Գզըլ Թէփէ աղբիւր | 8500 |
| Քէչի պէլի աղբիւր | 8600 |
| Զայըր-կէտիկ լեռնանցք | 8450 |
| Պուզ գայա | 8300 |
| Գաչ օլուգ | 8100 |
| Համզալը եայլա | 8000 |
| Գօնագ | 7850 |
| Մէյտան | 7600 |
| Չիտէմ կէօլիւ լիճ | 7300 |
| Գաչ օլուգ աղբիւր | 7200 |
| Տէվէ Թէփէ | 7100 |
| Գուլէ Տաճիկ | 7000 |
| Մատէն Թէփէ | 6700 |
| Կիւլէկ մաղարա-պունար (աղբիւր) | 6600 |
| Կուլուկ ? աղբիւր 'ի Կուսկութա | 6500 |
| Հիւսէին աղա աղբիւր 'ի Գիւլը պօղազ | 6250 |
| Գանսիզ գալէ (Տանձուտ ?) | 5800 |
| Էրճէ-կէտիկ | 5500 |
| Իչմալը օլուգ աղբիւր | 5250 |
| Սու-Նէտէրէ աղբիւր | 4900 |
| Անաշա աղբիւր | 4150 |
| Աղբիւր Կուկլկայ կապանի | 3200 |

5 · ԼԻՃՔ · — Կատարաբերձ կազմակերպութիւն լեռնաստանին Կիլիկիոյ' Հարկ է թէ չտայր ասպարէզ ընդարձակ բարձրատափից և լեռնադաշտաց, որով և ոչ լճաց մեծաց, որպէս յԱլպեայս Հելուետաց կամ Հայոց Մեծաց. փոքունք միայն և խորք երևին ուրեք ուրեք լճակք 'ի վերնագոյն սաՀմանս, որպէս ամբարանոցք Հալից

ձեանց և գուբք զովագինք. այսպիսիք են յիշեալքն 'ի վերոյգրեալ ցուցակի լերանց, երկուստեք Քօշան լերին մի մի լիճ. յարեւմտից՝ Գարա կէօլ յ'8000' բարձու, իբրև խոր աւազան 'ի քարաժայռս, որոյ չերևի ելևմուտ ջրոց. յարևելից՝ Քօշաճ կէօլ հաւասար բարձրութեամբ, այլ նուազագոյն տարածութեամբ և խորութեամբ, զի և ցամաքի իսկ ամարանի: — Գար-կէօլ, փոքր լճակ, 'ի միջին գահաւանդի, 'ի հարաւոյ Քէչիպէլի լերին. 'ի սորա հարաւոյ ելից և 'ի Հս. Կիւլէկ մաղարայի կապարաբուլուց՝ Ջիտէմ կէօլ, 7300', որ և Սաֆրաճ կէօլիւ կոչի, այսինքն է Քրքմոյ լիճ:

6. ՏԱՐՐԱԿԱՆ ԿԱԶՄՈՒԱԾ ԼԵՐԱՆՑ. ԲՐԱԾՈՅՔ. ՀԱԼԱԾՈՅՔ. — Որչափ ինչ քննեալ է բնագէտ տեսողաց, հասարակ զանգուած լերանց երկրին կրաքարուտ է. վերին միապաղաղ գահաւանդն յանդիման առնէ Թխորակ կրաքար՝ բիւրղակերպ, ողորկահատ, սպիտականիշ կճամման երակօք կամ խայտուածով. ուրեք կարմրագոյն և դեղնագոյն խառնակուտով, և 'ի ստորոտն ուրեք՝ կաւաքար հանդերձ փայլածու արդեաքարիւ, որպէս յԱգռաւասարն: Միջին գահաւանդն եւ՝ մանաւանդ արևմտակողմանն՝ որ ծանօթագոյն է, 'ի նմին նիւթոյ է, այլ ունի և խառնուրդ գայլախազի, (Hornstein). 'ի միջի յայտքար (diorite) զանգուածոյ Գարագափուի և Գարադաշի՝ երևին սևորակ և սպիտականիշ երակք կրայինք և կաւայինք: Ի ստորոտս բարձու Մէտտէսիզ լերին և այլ ուրեք ուրեք յարևելակողմն նորին՝ 'ի (Տէլիկ գայա) Ծակքարէ ցկուլկութա, 'ի միջի հասարակ կազմուածոյն նշմարի կաւայինն արդեսեան, և ուրեք օձաքար: Ի հիւսիս-արևելեան կողման Պուլղարայ՝ 'ի Կարմիր սարէ (Գզըլթէփէ) ցՊուլղար-մաղարա, յաճախագոյն է օձաքարն և յայտքարն. հիւսիսակողմն սորին զանգեալ է հրահալուտ նիւթովք երկաթի, կապարի և արծաթոյ: — Ի կողմանս Պուլղար մատէնի և հովտին Էլխօձայ՝ յարևմտից կուսէ ընդ աբևելս՝ ձգին նիստք քլորուտ կաւային արդեսիայ, 800' թանձրութեամբ. որպէս և 'ի կողմանս Էօքիւզ-կէտիկ (Եզնանցից) 600' թանձրութեամբ կաւուտ և տալքային (talk) արդեսաքարիւ: Հաջին տաղ և սահմանակիցքն երևեցուցանեն սպիտակ կրաքար խիտ և հատաձև, յորում և կարմրաժեռ երկաթային ժանգք: — Թէպէտ և դուն ուրեք նշմարին բրածոյ ժժմակք, այլ յայտ է 'ի մանր քննութենէ՝ զի նիստք յատակին 'ի ստորոտս վերին գահաւանդին և 'ի միջնումն՝ ձուլեալք են յայլ և այլ տեսակ մանր լումայիկ ժժմակաց (nummulithes): — Հարաւակողմն միջին գահաւանդին՝ սահմանն անտառաց՝ զանգեալ է 'ի կաւայնոյ և 'ի փտրածոյ (detritus): — Վերնակողմն առաջին կամ ստորին գահաւանդի արևմտեան ծանօթագոյն մասին, որպէս սահմանքն Լամբրոնի, երրորդակ հողագետին է, խառնազանգ 'ի տղղմոյ, յաւազաքարէ և 'ի կրոյ, տախտակաձև կուտակօք: — Միջահընակ (Miocène) նիստք երևին 'ի ստորոտս բարձրաբերձ լերանց, որպէս 'ի հովիտս Կուսկութայ, Աղաճքիսէի և Գարըլպօղազի: — Խոնարհագոյն մասն երկրին և դաշտակողմն՝ հեղեղակ գետին է երրորդակ և արգասաբեր հողով, յաճախ խառնեալ դեղնագոյն իմն կաւով: — Զկազմած գագաթանց կիլիկեան գահուց 'ի սահմանս Կուկլակայ՝ հնագոյն համարի Դեսիէ քան զհասարակն Տաւրոսի. երևին 'ի նոսին քարացածք ստորին խաւից երկրորդակ հողոց. իսկ 'ի ստորոտս նոցին եգիտ նա քարացեալ ոստրէս մեծամեծս իբր կէս Զ. երկայնութեամբ, որպիսիք ցայնժամ չէին յայտնեալ այլուր: (Տես յէջ 8):

Ի դոյզն երկրաբանական նշանակացս գուշակի՝ չերևել կամ ոչ ակն յանդիման՝ հրաբղխային կազմուածոյ և նիւթոց, բայց եթէ դուն ուրեք, որպէս յիշեցաւ 'ի վեր անդր առ Կարմրասար (Գզըլթէփէ) լերամբ: Այլ թէպէտ ոչ յատուկ հրաբղխային, բայց արտացայտ (eruptive) ժայռից կազմած նշմարի, յաւէտ 'ի հիւսիսակողմն պարու լերանցն, սակաւ մի և 'ի հարաւակողմն: Ոչ գիտեմ որքան հաւանութեան տեղի ունիցի աւանդաբանեալ եռօրեայ հրածխութիւնն Տիւլտիւլ լերանց՝ որ խուն մի յառաջ յիշեցաւ[1]: — Ի կողմանս յայսոսիկ՝ միայն յարևմըտեան հարաւային ափունս Պամփիւլիոյ առ Տէլիկդաշ գիւղիւ և լերամբ՝ յայտնեցաւ տեղի մի իբրև փոքր վիհ, զորով և որմ ածեալ է 'ի վաղուց, ուստի հանապազ բոց հրոյ ելանէ պայծառ, և 'ի Թուրքաց կոչի Եանար, յորում և խորովի միս. այլ ոչ երկիր սասանի անդ, ոչ ծուխ կամ ցայտք հրոյ, և ոչ հրաբղխի նիւթք առ նովաւ: (Տ. յէջ 10):

Աղօտ ինչ նշմարք հրակիր երկրի իցեն արդեօք և Ջերմուկքն, յորոց յիշէ մի ոմն 'ի մերոց մատենագրաց կամ թարգմանչաց ԺԴ դարու, հանդերձ նշանակաւ դրիցն. « Ի Կիլիկիա՝ մերձ առ դղեակն Հարունի կոչեցեալ՝ է » ջուր ջերմուկի, յոյժ օգտակար ամենայն ցաւոց. բայց » (յաւելու և զարմանալիս) որ ոք գնայ անդ և մտանէ 'ի » ջուրն, յառաջին օրն կորուսանէ զլոյս աչացն և մնայ » կոյր աւուրս երիս. և ապա զկնի երեք աւուրն վերստին » առնու զլոյս աչացն. և այսպէս բժշկի յամենայն ցաւէ »: Եւ այլ իմն զարմանալի գրէ նոյն այր[2], որ գէթ տայ փաստս օգտի երկրաբանական քննութեան տեղեացս. « Ի նոյն Կիլիկիայ մերձ Անարզաբայ, 'ի գեօղն Ճուրակի » կոչեցեալ, անդ մերձ է ծովիկ փոքր, յորում ծովակ՝ » եթէ ձի կամ այլ անասուն մտանէ 'ի ջուրն, նոյնժամայն կճղակն կորզեալ անկանի, նաև ագին և բաշն՝ » ամենայն մազքն կորզի »: Զարդիս ծանօթ են Իլիճէ ջերմուկք՝ 'ի գոգս գահուց Կիլիկիոյ, յանկեան խառնըրդոց Գըրգկէչիտ գետոյ ընդ օժանդակին Ջիֆտէխանի: — Մակար պատրիարք Անտիոքայ յելս ԺԷ դարու յիշէ ըզՋերմուկս Ս. Կարապետ վանաց Զէյթունի, յոր գային ուխտաւորք 'ի բժշկութիւն: — Զարմանալի կամ ախտահաւաք յատկութեան ջերմկաց՝ հաղորդս առնեն ոմանք 'ի մերոցս՝ և զգետս իսկ, որպէս վասն Տարսոնի գետոյն ասէ ոմն. « Պատագրոսաց դիւրէ՝ կախել զոտն 'ի ջուրն ». թէպէտ և այլք վասն ցրտութեանն՝ յոյժ վնասակար համարին զգետն զայն, որպէս և զԱնելեկիոյն:

1 Վրիպեալ համարիմ՝ թէ ոչ հեղինակին՝ Վանական վարդապետի՝ այլ գրչին, յասելն, թէ « 'ի Կիլիկիա կայ լեառն մի Բուռ- » կանոս ասեն, հանապազ հուր տոչորի 'ի ծայրին, 'ի գլուխն ». փոխանակ Սիկիլիա ասելոյ վասն Էտնեայ լերին կամ վասն Վուլգանոյ:

2 Որ է Ներսէս Պալենց կամ Պաղոն, յաւելեալ 'ի թարգմանութեան լատին Դաւազանագրոց Ֆրա Մարդինի Լեհացւոյ:

Ըստ երկրաբանական և հրաբղխային երևոյթս համաբոլորին և ուժգին սաստկութիւնք գետնոյ, և փլուզմունք հանդիպեալք 'ի Կիլիկիա. յորոց կարգի մեծ և նշանաւոր է հանդիպեալն յամի 1269, զոր այսպէս պատմէ ժամանակակից գրիչ. « Շարժեալ սասանեցաւ երկիրս մեր առ » հասարակ, նա և բազում գաւառք այլազգեաց. և այս » ոչ 'ի մի ժամ, այլ զրեթէ ամսօրեայ ժամանակս. մինչ » զի անապատացան բազում շինանիստք. քանզի Գլխա_ » կըն կոչեցեալ Սարաւանդիքար' ընդ մէջ հերձեալ յեր_ » կիր կործանեցաւ, զամենայն բնակիչսն ծածկելով, » բաց 'ի սակաւուց. նա և Համուսն անուանեալ' զմայր » սիրելի որդւովք և որ միայն էին' կորոյս տապալամ փախ_ » ճանաք: Ցան բանիս և որ կարի վշտալին է. քանզի գե_ » բռնհալածն ումեմ Արքակաղինն անուանեալ' և որ ընդ » վիճակաւ նորա բազում աղօթանոցք և մենաստանք' » առ հասարակ 'ի վայր խոնարհեցին: Եւ անդ էր տեսանել » արժանի ողբոց պատահումն, և լալ ակնածնաց գառ_ » նութիւն. վասն զի ամանք 'ի հեծութեան և այլք 'ի հառաչ, » հէրք 'ի ձիչ, այլք յողբս. և ով որ կարասցէ պատմել » զանպատմելի վիշտն' որ եհաս նահանգիս Կիլիկեցւոց. » ահեղութիւն երերեցելոյ, քաղաքաց չհարաւոտ, ժողո_ » վրդոց ապառումն, և ամենայն հասակի սուգ անմխի_ » թար... Եւս եղև այս 'ի ժամանակս զարմանալեաց, յամ_ » սեանն մայիսի.. յորում էր թիւ տոմարին ՉԺԸ »: Լրացուցանէ զկիսատակ պատմագիրս և Պատմիչն Կիլիկեցւոց այսու բանիւք. « Ի թու. ՉԺԸ եղև շարժ սաստիկ,



1. Քարայրեայ սարքը 'ի կողմանս Կուչկաւայ.

» և յաշխարհին Կիլիկեցւոց 'ի տեղիս տեղիս բազում չէնս » յաւեր դարձոյց, և առաւել առ լերամբն որ Սեաւ կոչի. » և զանառիկ զղեակն Սարվանդաւ' յաւեր դարձոյց, և » զբնակիչսն առ հասարակ մահացոյց. և 'ի սուրբ ուխտն » Արքակաղնին' քահանայս և կրօնաւորս վախճանեցան 'ի տանցն ընկղմելոյ. և ընդ լեռնակողմն ընդ այն » բազում չէնս. և զբերդն Գեղնկարն և այլ բազում » տեղիս' խարխալեալ հերձեաց »: — Յառաջ քան զայս յամին 1114 'ի Նոյեմբեր 29 (ՓԿԳ մարերի)[1] մեծ սաստկութիւն եղեալ էր 'ի կողմանս Ջահանայ, և 'ի Սիս բազում չէնք կործանեցան, մահուամբ ոչ սակաւ զարծելով. Նոյնպէս և 'ի կողմանս Սեաւ լերին, յորում Բազուկեղանց անապատ գերեզմանն եղև միաբանիցն որ կային 'ի պաշտաման: Յիշէ զայս սաստկութիւն և բարեկամն մերայոց Վենետկեան պատմիչն Սանուտոյ, 12 գեօղս ասելով կործանեալ կամ աւերեալ, հինգ բերդս և երիս վանորայս: — Այլ ոմն 'ի համազգեաց նորին' ուղևորեալ 'ի նոյն կողմանս' վկայէ մեծի սաստկութեան եղելոյ յամի 1514 'ի Տարսոն, յԱդանա և յայլ կողմանս մինչև 'ի Մելիտինէ իսկ: Ի կանխաւորն ևս ժամանակս յիշատակին ուժգին սաստկութիւնք կողմանց Անազարբոյ, յորոց երկիցս կործանեցաւ քաղաքն այն մեծ, մի յետ Ա դարու Քրիստոսի, և կանգնեցաւ առատաձեռնութեամբ Ներուայ կայսեր, միւս' առ Յուստինիանու 'ի Զ դարու:

1 Ըստ Մատթէի Ուռհայեցւոյ: Օտարազգի պատմիչք ամ ևս յիշէ զսաստկութիւն Անտիոքայ յ'13 Նոյեմբերի. 'ի նմին ամի:

Ծանօթագոյն միանգամայն և պիտանեգոյն տարրականք երկրին Կիլիկիոյ՝ են հրահալելի նիւթքն և բրածոյք և հողք ինչ: « Բաքունին հանճարեղ թումա՝ յօրինող », 'ի ԺԴ դարու, իբր կէս էջ համառօտ ստորագրութեան բնական բերոց Կիլիկիոյ, յայս տեսակաց յիշէ զԱրչասպն և Ծծումբ, որպէս և Ջերմուկ և Բորակ և Ջիւր սեաւ և սպիտակ, և Աղ, և Ապակեհող: Աղն՝ կարծեմ աղքար էր բրելի, որպէս Կողբայն 'ի Մեծ Հայս. զարդիս անծանօթ են աղահանք 'ի Կիլիկիա. այլ զէութիւն նոցին կամ զառատութիւն, (յոր սակս և 'ի վաճառ արտահանութեան կարգեալ,) զգացուցանէ և պարգևագիր Լևոնի Դ առ Վենետկեցիս, յամի 1333, զի ազատ առնէ զնոսա 'ի պարտաւորութենէ գնելոյ աղ և ցորեան [1]: — Ապակէհողն գտանիւր 'ի սահմանս Սսոյ, զոր և Բժշկարանք մեր յիշեն, թէ « Աղէկն 'ի Սիս լինի ». և թէ, « 'ի Սիս աւազ » կայ, կու հալեն. և յայլ տեղ այլ կու չինեն չատ »:

Զգիտեմ որ 'ի սոցանէ ծանօթ իցէ արդ, որպէս են հրահալելիքն Կապար և Երկաթ, այլ և սակաւ ինչ Արծաթ, 'ի ծոցս վերոյիշեալ արտացայտ ժայռից. այսինքն են պորփիւրն, օձաքարն, բիւրեղակերպ կրաքարն, յայտաքարն, լուսքարն (euphotide), և երկդիմակն (amphibolite): Մետաղքն արտակիտեալք ընդ կուշտս կրաքարուտ բնազանգուածոյ լերանցն՝ զուգահեռական իմն են դրից խութից և կատարաց լերանցն, 'ի պատառուածս և 'ի խորշս նոցին: Տակաւին ոչ ուրեք 'ի բովս լերանցս երևեցան առատօրէն երակք և կանոնաւոր նիստք մետաղաց, այլ կոյտք կոյտք փոքունք. հաւանելի է թէ գտցին և երակք և թանձր նիստք 'ի խորագոյն խորշս, քանզի ցարդ 'ի վերին երեսս եւեթ պեղեալ է:

Երեք գլխաւոր տեղիք են բովոց 'ի Պուլղար լերինս, և առատագոյն 'ի հանսն Կապարն է. մին կոչի յատուկ անուամբ լերինն՝ Պուլղար Մաղարա, միւսն յանուն Կուկլակայ՝ Կիւչիւկ մատէն, զի հալոցք են 'ի սահմանս Դրանցն. երրորդն Պէրէքէթլի մատէն, յարևելից հիւսիսոյ նոցին: — Առաջինն 'ի թիկունս լերանցն է, այսինքն 'ի Հ. Մ. կողմն, 52 բնամղոն հեռի 'ի պահակէն Կիլիկիոյ 'ի Մ. Հ. նորին, և սակաւ ինչ աւելի հեռի 'ի Լամբրոնէ՝ կըշիռ 'ի Հս. նորին, 4000' 'ի վերոյ դաշտակողմանն: Նիւթ սորին է ածղատ հողային կապարի (carbonate de plomb terreux), խառն կաշէնիւ (galène). քանքն (gangues) են կրայինք, սակաւ ինչ երկաթածանգիւ և կարմիր երկաթային կաւով: Որչափ ինչ ստուգեցաւ ցարդ 'ի փորձոյ՝ թուի կապարն $^{1}/_{3}$ մասն լինել նախնական նիւթոյ կամ քծուարին, և ճշգագոյն եւս $^{21}/_{00}$ մասն. 'ի 100 կշիռ (քիլոգրամ) նիւթ՝ ունի 428 գրամ արծաթ, և 4 գրամ միայն Ոսկի. այսինքն ոսկին $^{1}/_{25000}$ մասն է բովանդակ հանածոյն: Թէպէտ այսքան նուազ է երևոյթ պատուականագունին 'ի մետաղս՝ և որ յետ այնր արծաթոյ, այլ 'ի հընումն առ հարստութեամբ մերայոց՝ թուի առատագոյն ծանուցեալ և հանեալ, որպէս զի դասիլ ընդ վաճառս հանեալս յերկրէն յԵւրոպէացի վաճառականաց. այն զի և առ մեզ յայտնեցան ոչ աննշան երակք արծաթոյ, ոչ միայն առ Դրամբքն Կիլիկիոյ, այլ և առ Սսով, բայց կամ թաքուցան կամ չարկան 'ի գործ [2]: Զարդիս 13 խորափիտք են 'ի գործ՝ 'ի միջոցի Կարմիր-սարի (Գզըլ Թէփէ) և Պուլղար-տաղ գեղջ, յութ կամ տասն բնամղոն տարածութեան. կան և խորափորք լքեալք յայսկոյս (Հր. Եւ.) լերանցն՝ 'ի հովտի Դարպաս գետակի, 'ի սահմանս փայտեայ և Սպիտակ կամուրջ կոչեցեալս (Թախտա և Աք քէօփրիւ): — Գրեաթէ 30 բնամղոնաւ հեռագոյն՝ այլ 'ի նմին հորիզոնական ուղղութեան՝ յելից Ագտաղի են հանք 'ի տեղւոջն Արփա-ուչուրումու անուանելոյ, ամենեւին համանմանք Պուլղարայն. վասն որոյ և համարի ընդ բովանդակ երկայնութիւն գծին ձգիլ մետաղական նիւթոյն, բայց փորձիւ ստուգեալ չէ: Զբարձրութիւն մետաղական երակին՝ համարի ոմն 'ի քննողաց իբրև 500'. քանզի ստորին խորափորքն 300', վերինքն 800' են 'ի վերոյ երեսաց հովտին: Թանձրութիւնն համարի 0,20 Չ. և բովանդակ զանգուած նիւթոյն 'ի միջոցի 10 բնամղոնից՝ իբր 800,000 Չափ խորանարդ. ամի ամի բրի իբրև 1000 Չ. խորանարդ: Գործաւորքն են Յոյնք եկեալք 'ի բովուց Կիւմիւշխանէի, որք ադիկամի և ոչ քաջ արուեստօրէն գործեն, վասն որոյ և ոչ յօգուտ մեծ պետութեանն, եթէ չիցէ ուղղեալ 'ի յետին ամքս. չկան և վայելուչ քրայք հալոցաց, այլ հնոցք 12 կամ աւելի 'ի գեղջն (Պուլղար-տաղ): Առ մէն 1000 կշիռ նիւթոյ՝ համարին աւելի կամ նուազ իբրու 100 ֆր. ծախք՝ 'ի զտել, իսկ արժէք 120, որով մնայ շահ միայն 20 ֆրանգաց:

Երկրորդ բովք Կիւլէկ մատէնի են 'ի յիշեալ Արփա-ուչուրումու, յԵլ. Պոտանդեայ և Ագտաղի, յար և նման առաջնոյն՝ ըստ որակի և ըստ նիւթոցն. բայց փորձեալ՝ գտանի նուազ քան զայն. $^{16}/_{00}$ եւեթ ընծայելով կապար, և 250 գրամ արծաթոյ, և 2 կամ 3 գրամ ոսկւոյ առ 100 կշիռ: Մի միայն խորափոր է անդ, 1176 Չ. բարձր յերեսաց ծովու, և հեռի 'ի գիւղօրայից, վասն որոյ զվեց ամիս միայն կարեն գործել անդ, բնակելով 'ի հիւղս գձուձս. յամի 1863 գործաւորք 34 բրեցին 213000 կշռոց նիւթ, որ առաքեալ զտի 'ի հալոցս Կիւլէկ գեղջ, հաստատեալս յամի 1867 յԱւստրիացի մետաղագիտացն՝ Ռուսսէկէր, Կինսպէրկ և Սլապէյ, (Russeger, Ginsberg, Szlabey) [3]. նա և յարևմտից գեղջն բացին սոքա այլ խորափոր՝ Կիւչէկ-մաղարա կոչեցեալ՝ մերձ 'ի Զիտէմ կամ Սաֆրան լճակ, այլ առ դժուարութեան տեղւոյն՝ յետ ամաց լքաւ գործն: — Երրորդ բովքն Պէրէքէթլի մատէնի 'ի 1970 Չ. բարձու, առ ստորոտովք Ապիշքար լերին, մերձ 'ի կիրճս Պօղազ-մատէն կոչեցեալ, 80 բնամղոն յԵլ. Հս. Պուլղարի, կապար միայն ունին և սակաւ յոյժ. հընոցքն են 'ի համանուն գեղջն որ իբր 20 մղոնաւ 'ի Մ. կայ բովուցն, ուր գրաստուք տանին զբրածն: Գետին բովուցն կապարագոյն և կրաքարուտ է, երեք կամ չորս

1 Concedimus . . . quod per officiales nostros Veneti non cogantur ad recipiendum frumentum vel sal. — *Cartulaire*, ecc. 194.

2 Պարքըր. Towards Sis there are also many mines of great value, but the Turkmans there used to hide them. — BARKER, 125.

3 Քոչի՝ Պուլղար մաղարա կոչէ զսա, և Արծաթահանք եւս անուանէ. իսկ Պէրալ որ սակաւ ամօք ինչ յետ նորա եկեալ և մանրագոյն քննութեամբ համօրէն բովուցն՝ գրէր, կամ բնաւ անարծաթ առէ զկապարահանսն, կամ յոյժ նուազ:

բնաւորին տարածութեամբ․ նիւան մետաղաբեր համարի 0,20 և մինչև 0,30 Չ. թանձրութեամբ․ և թուին բազում երակք լինել նորին․ հինգ խորափորք են անդ, յորս հազիւ երիս կամ երիս և կէս ամիս մարթ է փորատել, և հանել նիւթ 350 կամ 450000 կշիռ ՚ի տարւոջ․ յորմէ ընծայի 50 կամ 35000 կշիռ կապարոյ զտելոյ։

Ի հարաւոյ կոյս բովուցս իբր 18 բնամղոնաւ հեռի, և ամենայն ՚ի բացեայ՝ յեզերս Ալըչըրայի և ՚ի ստորոտս Լաճիկ լերին, յայտնեցան և կղկղանք Պղնձոյ, և կոչին Պօզ-մադէն․ որ և փորձելով եգոյց 4 կամ 5/00 պղնձոյ․



2. Խանար, մին հրարոց (Տես էջ 7).

այլ չեն ՚ի գործ արկեալ բովքն․ որպէս և ոչ քով հեռաւորեալ Պուլղար լերինք, յորոց գեղեցկագոյն կապարս նշմարին կապոյտ երանգք պղնձոյ ածխատի և մանր կուտակք գաւհարակ քարի (malachite)։

Մանօթութիւնք բովուց լերանցս Պուլղարայ են ըստ քննութեան Պերոլեայ փռանկ գիտնոյ[1], իբր 20 ամաք յառաջ (1863-4). և ՚ի դէպ է թէ յետ այնր փոխեալ իցեն հանգամանք փորատկաց և քանակ բերոցն․ մանաւանդ զի անդասրն յայնմ ժամանակէ կամ էր պետութեանն՝ յընկերութիւն մի գիտուն յանձնել, կամ վարձել զամենայն բովս միանգամայն՝ վասն 90 ամաց։

Զատ ՚ի կապարոյ և ՚ի յիշեալ ամենայն ինչ արծաթոյ և ամենագոյն ոսկւոյ, զոր առաւել կրկնապատկեն, անդրագոյն քան զայնիկ սահմանս լերանց Կիլիկիոյ, ՚ի վերին հովիտս Սարոսի և Ջահանայ ՚ի Քօզան լերինս, ՚ի Խարսանա օղլու, ՚ի Ֆեքէ, ՚ի Հաճին և յամենայն միջամասն արևելեան առափնից Սարոսի կամ Սաւան առ., յորոց և ՚ի միջնադետս զօտի մի լերանց Պաղրասարի (Արկաթոյ լ.) կոչի, և ՚ի սահմանս Զէյթունի։ Ի սոցանէ առելի քան զերկոտասան քանք երկաթոյ[2] քննեցան ՚ի կողմանքս՝ յԱղբաշաց լեռնադաշտաց, և ոչ սակաւ նաև ՚ի կողմանս Լամբրոնի և Տէկիրմէն-տէրէսի ձորադեղի․ ընծայեն սոքա զկարևորն ՚ի պէտս փառաւորս կապարահանիցս Կիլիկիոյ․ այլ ոչ գիտեմ զհանգամանս Երկաթահանիցս այսոցիկ, զի և ոչ հանդիպեցայ մանր ստորագրութեան տեղեացն․ այլ միայն զի առատ և դիւրագիւտք են, և ընտիր քան զերկաթ Սուրիոյ։ Իսկ զի առ հարստութեամբ մերոց պայազատաց առատօրէն հատեալ լինէր Երկաթ, հաւանեցուցանէ դաշնագրութիւնն յամի 1285, Քէլաւուն սուլտանի Եգիպտոսի ընդ Լևոնի Բ., պահանջելով ՚ի նմանէ ամի ամի 10,000 թիթեղն երկաթի հանդերձ բևեռօքն[3]. և այնքան յորդոյ հանքաքէն թիթեղունքն, մինչև երկուց յաջորդաց ասպնել մնացեալ մի ատրակ։

Յաղագս հողոց՝ զոր ՚ի վերոյ յիշեցաք, գտանելի է և կարմիր ճաղ ինչ, զոր բերեն ՚ի Պօյա-մադարա անուանեալ քարանձաւաց առ ափամբք Կիւդնոսի, ընդ մէջ (Աքճաքալայ) Պարզայել տաղ և (Սեաւ Դրանն) Գարազատիւ լերանց․ և է նիւթ չինութելու, ՚ի պէտս ներկուածոյ, զոր և առնեն յԱտանա և ՚ի Տարսոն։ — Ըստ պիտանի նիւթս համարելի են կրաւանք և Աճողանք, եթէ գտցին և ՚ի գործ արկցին․ զի և յայտնեցան իսկ ՚ի Հռ. սահմանս Սոյ ՚ի Մանգաղ ձոր՝ առ Կէտիկլի գիւղի, այլ ոչ բրեցան[4]. որպէս և առ Թօբալըու գիւղս ՚ի Հր. Ս. Տարսոնի, և առ Հորասն լերամբ։ — Ոչ պակաս քան զ՚300 ազգս քարանց և մետաղից հաւաքեցին բովագործքն հռոմեայ Իբրահիմ փաշայի, յորս ոչ սակաւ գեղեցիկք և արժանաւորք․ ցաւէ ինձ զի ոչ հանդիպեցայ մանրամասն ցուցակի, և առելի ևս անհմտութեանս պալեղինաց գրոց, և դժուարութիւն ՚ի բացատրութիւն և յանձանօթ տառանկան անուանց։ Բայց յայտէ պիտանի քարանց մի ծոտացոյց զէթ զխաղ ողքմն գրեալէ յ՚2000 ամաց հետէ յիշատակեալն ՚ի Պլինեայ (Լ.Զ. ԽԷ.), Թետանեալքար Կիլիկիոյ, զոր պատուականագոյն գոսէ քան զայլոց տեղեաց, վասն այն զի և՛ ջրով և՛ ձիթով ՚ի փոր արկանի, մինչ այլոց տեղեաց՝ կամ միայն կամ միւսով միայն։

7. ԳԵՏՔ ԿԻԼԻԿԻՈՅ. — Բազմութիւն և հոծութիւն լերանց՝ ինքնին յայտ առնեն առատ շահաւորանս գետոց և աղբերաց. սակայն զի չեն կարի լայնանիստք և ձիւնաչարք, և զի ոռոգեալ է ամառն՝ յաս գրեթէ կէրիմէցին, չարք յազբերաց գետակացն ցամաքին ամառնային, և հոսքն մերկանան. սակայն զխոռորք գետոց և ծովակերևոյթք՝ անհամահաւասար են։ Գտանին ՚ի մեծի լեռնապարան և մշտադալար աղբերքն, որպէս ՚ի Կիւրզէլ թէփէ, ՚ի Պուլղար մադարա և ՚ի կապարահանս Դրանց Կիլիկիոյ։ Հին աշխարհագիրք մեր՝ ըստ Հնագունից Յունաց՝ առէ․ Կիլիկիա ունի գետս վեց․ զԱռիմակէս, զԿալիկադնոս, զԼամոս, զԿիւդնոս, զՍառոս[5], զՊիռամոս․ յայսկեմին ՚ի Պամփիլիոյ կոյս սկսանելով զկարգն։ — Առաջինն

1 Գիրքն 30 էջ քան տպագրեալ է ՚ի Բերա Կ.Պօլսի յամի 1866։
2 Ի Բուսաէֆէնտէ և յընկերացն Աւստրիացւոց, որպէս նշանակէ նա և ՚ի տեղագրեալ քարտի իւրում։
3 Cartulaire, 224.
4 Բէզգէր. մեջբ. RITTER, ERDKUNDE, XIX, 79.
5 Գրչագիրք մեր ունին զՍառոս.

(Arymagdus կամ Orymagdus) չէ քաջ ծանօթ, յայտ է թէ փոքրագոյն է, և յարևմտից գետոյն Սելևկիոյ խընդրելի, 'ի հոյլս մանունց վտակաց որք 'ի հարաւային կողից լերանցն Իսաւրիոյ և Պիսիդիոյ գեռալով իջանեն, և հերձեալ ձորակս մանունս՝ փութանակի թափին 'ի ծով. Հաւանօրէն Անամուրի գետակն է Արիմակդոսդ, և յելից կուսէ հրուանդանին ծովամուտ լինի։ — Երկրորդ գետն Կալիւկադնոս, Καλύκαδνος, Սելևկիոյ գետ կոչի արդ, որպէս և առ մատենագիրս մեր, երրորդ գոլով 'ի մեծութեան 'ի գետս Կիլիկիոյ. 'ի զանազան աղբերաց և վտակաց յառաջագայեալ, 'ի սկզբանց կամ 'ի գլխոյ Տաւրոսական լերանց, որ 'ի միջոցս Պիսիդիոյ և Իսաւրիոյ. որոց գլխաւոր և հարաւագոյնն կոչի Կէօքսու, և յամանց ողջոյն իսկ գետն այսպէս կոչի. յահեկէն՝ որ է 'ի Հս. ընդունի սա զՊաշլըք? տէրէ վտակ, 'ի միջի Թողլով զԷրմէնէկ քաղաք. ընդ մէջ նորին և այլոյ վտակի՝ ձգի երկայնանիստ լեառն Թօփ-կէտիկ։ Յարևմտից հիւսիսոյ ընդունի հզօրագոյն վտակ մի Պուզագչի կոչեցեալ, առ Մուդ քաղաքաւանաւ. յորոյ յելից կուսէ միւս ևս վտակ՝ Սարը-գավագ անուն՝ խառնի 'ի գետն[1]. ապա և անդր գրեաթէ ուղղակի ընդ արևելս ընթանայ յորացեալ, մինչև առ Սելևկեաւ ունել 50 Զ. լայնութեան կամ աւելի։ Հովիտ գետոյս թէպէտ և անձկացեալ 'ի խռան լերանց՝ քաջ արգասաբեր է քան զարևելեայ մասն Քարուտն Կիլիկիոյ։ Ի պատմութեան անմոռաց մնայցէ գետս այս, վասն առ Սելևկեաւ ջրախեղդ առնելոյ զմեծ կայսրն Գերմանացւոց Փրետերիկոս Ա, 'ի լոգանալն կամ յանցանելն, յամի 1190։ Ի միջին դարս Բիւզանդացիք կոչէին զգետս զայս և Երկաթագետ, Σιδηροπόταμος, Fluvium ferreum, թերևս վասն երկաթահանից 'ի լերինսն ծանուցելոց յայնմ ժամանակի։

Երրորդ գետն Լամաս ըստ արդեացս, Լամոս (Λάμος) ըստ Նախնեաց, փոքրագոյն է 'ի վեցեսին գլխաւոր գետս Կիլիկիոյ, այսպէս կոչեցեալ յանուն ծովեզերեայ գեօղաւանի, յորմէ և ողջոյն գաւառն այն կոչէր Լամոսեան, և համարէր արևելեան եզր Քարուտն Կիլիկիոյ։ Ընդ մէջ սորա և Կիւդնոսի նշանակին մանր գետակք. Սարփա չայ, Տէյիհէ սու, Մէզէղլի, Կիւզէլ տէրէ, և մանրագոյն ևս վտակք։ — Ի խորագոյն կամ 'ի հիւսիսագոյն խորշ ընդարձակ ծովածոցին՝ զոր մարթ է յանուն Տարսոնի կոչել, մտանէ գետն չորրորդ, որ և արդ յանուն այսր հռչակաւոր քաղաքի կոչի Դարսուս-չայի, իսկ 'ի հնումն Կիւդնոս (Κύδνος), չորրորդ և ըստ մեծութեան և երրորդ 'ի հռչակի. այլ ըստ այսմ և առաջին մարթի կոչել վասն հնագոյն յիշատակութեանն յաւուրց անտի ինքնակալացն Ասորեստանեայց։ Ակունք նորին են յարևմտակողմն բարձր գահուց Կիլիկիոյ, այսինքն է 'ի Պուլղար լերինս, 'ի Մտ. Պօյա-մաղարայի, յերիս առաջս. որոց գլխաւոր աւելեանն՝ կոչի Ճէհէննէմ-տէրէսի (Դժոխաձոր), որ և ընդունի յարևելից կուսէ՝ յահեկէն՝ զայլ և այլ վտակս պահակին Կիլիկիոյ, Քէրքիտլի, Աղաճ-քիսէ, Մէնէվշէ, Կուլակուբա, Կիւլէկ-սու։ Արևմտեան առաջն յերից վտակաց հաւաքի, յորոց մին Լամբրունի գետակ է կոչելի, զի և յանուն բերդին Թուի կոչիլ Գայէ-սու. երկրորդն փոքրիկ՝ Տէյի չայ, խառնի յերրորդն և 'ի հզօրագոյն՝ Տէկիրմէնտէրէսի, որոյ ուրոյն օժանդակ վտակ մի Թուի կոչեցեալն փամպուգ տէրէսի (Բամբակաձոր), յոր անուն և գեօղ նշանակի չորիւք կամ հինգ մղոնաւ յարևմտից հարաւոյ Լամբրունի։ Յետ միութեան երեցուն առաջիցն գետացեալն Կիւդնոս կոչի Մէզարլըգ, և մտեալ 'ի դաշտ՝ առնու զանուն քաղաքին Տարսոնի։ Հակիրճ են սահմանք ընթացիցն, յականցն մինչև 'ի քաղաքն, իբրև 35 մղոն, աւելի կամ նուազ, իսկ 'ի քաղաքէն մինչև 'ի ծովն՝ 10 կամ 11 մղոն. այլ 'ի հնումն մերձագոյն ևս գտանէր ծովն 'ի քաղաքն, և հաստացանէր անդր նաւս ակաղձունս, ունելով և ընդարձակ նաւահանգիստ իմն ծովալիճ, անուանեալ Հռեգմա, որ արդ չերևի բնաւ. հողն վարեալ յողողանաց գետոյն՝ ընդարձակեալ է զցամաքն և խցեալ զնաւամուտն. Նա և սառին ընթացք գետոյն խոտորեալ երևին 'ի հին շաւղէն, անարգել յեղաշրջմամբ 'ի կակուղ դաշտին. այսպէս և երկոցուն մեծագոյն գետոց՝ Սարոսի և Պիւռամեայ ընթացք և բերանք այլայլեալք են։ Հնագոյն Արաբացի պատմիչք՝ Պէրտայ կոչէին զգետս զայս, ցրտին նշանակելով, և ցարդ համբաւի ցրտաջուր լինել, որպէս Թուի՝ վասն դիպաց լոգանալոյ 'ի նմին Մեծին Աղեքսանդրի և ըմբռնելոյ 'ի սարսուռ. այլ չեն աւելի քան զայլս 'ի գետոց ջուրքն ցրտինք. և ոչ յայն սակս սարսռեցաւ Աղեքսանդր, այլ զի ջեռեալ ինքն գոլով մխեցաւ 'ի ջուրսն։ Ի հին հայ Թարգմանութեան մերում վարուց Աղեքսանդրի՝ այսպէս ասի զիրացս. «Է անդ ('ի Կիլիկիա) գետ մի որ կոչի Ովկէանոս?. մաքուր է ջուրն, » վճիտ և ականակիտ. ցանկացաւ Թագաւորն լոգանալ » 'ի նմա, և 'ի բաց մերկացեալ լուացաւ 'ի գետն և 'ի » դուրս ելեալ դարմանեցաւ. բայց ոչ եղև նմա լոգա» բանն՝ փրկութեան պատճառ. քանզի հովացեալ ցա» ւեաց գլուխն և ամենայն փորոտիքն դժուարեցաւ»։ — Նա և 'ի սկիզբն ԺԳ դարու գային նաւք մինչև 'ի գետաբերանն Կիւդնոսի, որպէս յիշէ Պատմիչն Բուրինեանց։ — Մի 'ի վերոյիշեալ վտակաց արևմտեան առաջիցն Կիւդնոսի 'ի սահմանս Լամբրունի՝ Ժեռակրի գետ կոչէր 'ի մերայոց[2]։

Գրեաթէ հուպ բերանոյ Կիւդնոսի է արդ և գետաբերան հինգերորդ գետոյն, մեծագունի քան զնախագրեալսն, այն է Սարուս (Σάρος) Նախնեաց, Սիյհուն կամ Սայհուն այժմեայց, որոյ 'ի հնումն հեռագոյն յարևելս կային մուտքն. գրեաթէ զուգակից գտանի ըստ մեծութեան և ըստ ընթացից՝ Պիւռամեայ, (որպէս և նորոյ անուամբ սորին՝ Ճիհուն). երկոցուն ևս չեն քաջածանօթ ակունք և առաջին ընթացք. այլ որպէս հաւանագոյն կարծի՝ երկու առաջք են Սարոսի՝ անջրպետեալք յերկայնաձիգ գօտւոյ միոյ Տաւրոսական լերանցն, զարդիս ըստ գլխաւոր մասինն՝ Քօզան կոչեցելոյ, որք քաջ 'ի հեռաւոր 'ի հիւսիսոյ իջանեն, յելից Ա Հայոց կամ Կեսարիոյ, և 'ի Մտ. Գ Հայոց և Ալպստանայ. և զուգընթացք 'ի հարաւ կոյս, ընդ մէջ Սսոյ և Ատանայ յիրար անկեալ՝ գործեն գետ հզօր, որ և Գըըլ-ըրմագ կոչի 'ի Թուրքաց. և ըստ

[1] Աւրոպիկ ըստ Չիհաչէֆի։

[2] Սամուէլ Վարդապետ գրիչ վարուց Ն. Լամբրունեցւոյ։

նմին ուղղութեան փոքր ինչ ընդ Մտ. խոտորեալ՝ իբր 25 կամ 30 մղոն 'ի Հր. Ատանայ թափի 'ի ծով։ Արեւելեան առաջին հզօրագոյն կամ երկայնագոյն համարի և բնիկ Սարոս, զի և կոչի իսկ անդ 'ի վերնակողմանն՝ Սառաճ-սու, և խաղայ ընդ հովիտ անձուկ, յահեկէ՝ որ է յարեւելից՝ զՊիմպուղա լեառն երկայնաձիգ ունելով, յաջմէ՝ 'ի Մ. այլ լերինս, յորոց ընդունի օժանդակս՝ զԱյէուս? և զՕւրուսմլու, որոց յիրար անկեալ առ Վահկայիւ՝ խառնին 'ի գետն։ Թերեւս մի 'ի սոցանէ կամ այլ գետակ մերձաւոր՝ իցէ կոչեցեալն 'ի միոյ մերոց պատմչաց՝ Ջկռճջուր, առ որով ասէ զԿիզիստռա բերդ։ — Արեւմտեան առաջին յելից կուսէ բարձուն Արգէոսի սողոսկեալ կրէ զանուն ոստանի տարագրելոյն 'ի հայրենեաց թագաւորին Բագրատունւոյ՝ զԾամնդաւայ, Զամանդի կոչմամբ. հանգոյն միւսոյն անձուկ ունի և սա հովիտ 'ի լեռնամէջս, յորոց՝ փոքունս և աննշանս կամ անծանօթս մեզ ընդունի վտակս. այլ ոչ նոյնպէս և 'ի ստորեւ՝ յետ մըտիցն 'ի բնիկն Կիլիկիա. զի աստ յաջմէն՝ որ է յարեւմըտից՝ ընդունի օժանդակս ոչ նուազունս, որպէս և յետ միութեան երկոցուն թևոցն՝ գետն յայնմ կողմանէ ընդունի և այլ հզօր օժանդակ։ Եւ այս յատուկ և նշանական է գետակացս, զի ոչ յարեւելեան դիմաց անտի մեծաց Տաւրոսական լերանցն լոկ իջանեն, այլ և 'ի յետուստ յարեւմտից գան՝ կտրելով զկարկառսն, կամ հուն ընդ խորաձորս գործելով երկուստեք Ագ տաղ լերին, որ ընդ մէջ պարուց Պուլղարայ և Ալա տաղի։ Առաջինն՝ որ է հիւսիսագոյն օժանդակն՝ կոչի Գօրգուն չայ, և 'ի սկզբան Կեօքսու, 'ի սահմանաց Նիկտէ վիճակի գալով, ուր և առ Պէրէքէթլի-մատէնիւ ընդունի զհամանուն նորուն վըտակ Պէրէքէթլի, և դոյզն ստորեւ զՃօձէսմիշ չայ։ Գօրգուն կոչի և Գարասու[1] կամ Գարապունար[2] և Քիւչիւկսու[3]։ Երկրորդ և հզօրագոյն ևս օժանդակն՝ որ յետ միութեան երկուց առաջից մեծի գետոյն (Սառանի և Զամանդեայ) խառնի 'ի նա՝ 'ի Հս. Ատանայ, կոչի Զագըտ չայ, այլ 'ի սկզբանն Գարպաս և Պօզանդի, յանուն հնոյն Պոտանդեայ. կոչի և Ագ-սու՝ անցանելով ընդ (Սպիտակ) Ագ և ընդ (Փայտեայ) Թախտա-քէօփրիւ կամրջօք, ժողովելով յինքն այլ և այլ վտակս. որպէս Փօրսուգ չայ, Գամըշլը, Գզըլձէ, և հզօրագոյնն քան զսոսա Գըրգ-կէչիտ[4] առ Փայտեայ կամրջաւ, ընկալեալ յառաջագոյն զԳարասու, և զՃէքէր-պունար վտակս. և այսպէս կոչի վասն հարկի անցանելոյ ուղևորաց ստէպ յայս և յայն կողմն նորին։ Զագըտ և Գօրգուն խառնին յիրեար 'ի Մ. Հս. Ատանայ, և յետ փոքու միոյ՝ ընդ բուն գետոյն Սարոսի։ — Ի հարաւոյ (յաջմէն) միւս ևս օժանդակ է Պոտանդեայ, Էլ կամ Ալի-խոձա[5], պատելով զհիւսիսիւ բարձրաբերձ պարու Գահուցն Կիլիկիոյ և խառնելով յելից կուսէ Պուլղար մաղարայի։

Վերջին կամ արեւելագոյն և հզօրագոյն գետ Կիլիկիոյ է Պիւռամոս՝ ըստ Նախնի Հելլենաց (Πύραμος), կոչեցեալ Երմնն, Ἑρμών, չգիտեմ յինչ սակս՝ յԱննայէ Կոմնենեայ. ըստ արդեացս Ճիհուն կամ Ճիհան, և ըստ մերայոցս Ջահան. յոր անուն կոչէր և նահանգն որ զՄարաշ ունի գլխաւոր քաղաք. քանզի 'ի նմա սփռեալ են աղբերակունք գետոյն, ընդ մէջ վերին հովտին Սարոսի և անջրպետաց Եփրատայ, առ Գ Հայովք և Գոմակենեաւ։ Երեք առաջք են Ջահանայ. հիւսիսագոյնն որ և միջինն՝ Խուրմա կոչի արդ, և թուի Կարմալաս (Καρμάλας) Ստրաբոնի, զոր ասէ 'ի Կատաոնիոյ բղխել և իջանել 'ի Կիլիկիա։ Երկրորդն յաջմէ նորին՝ որ է յարեւմտից՝ է Կոկիսոնի գետակն (Կէօքսու). երրորդն յահեկէ՝ յարեւելից՝ յանջրպետաց Եփրատայ իջեալ՝ կոչի Սէօկիւտլիւ (Ուռենուտ)։ Իցէ՞ արդեօք սա կամ մերձաւոր օժանդակ մի՝ յիշեալն 'ի պատմչէ մերմէ Պառատիս գետ. զի և օրինակք ինչ աշխարհագրութեան Խորենացւոյ՝ զայս անուն գետակ դնեն յ'Գ Հայս[6], որ է սահմանակից Ջահանայ. իսկ պատմիչն յիշեալ՝ առ Պառատիսաւ ասէ լինել զՆերքին Կրակկա գիւղաքաղաք, առ որով բնակեցուցանէր Թորոս Ա զգերութիւն Յունաց՝ զոր վարեաց 'ի Կընդռոսկաւեայ ամրոցէ նոցին. զի և յայլմէ Բիւզանդացի պատմչէ վկայի լինել սա ընդ մէջ Կոկիսոնի և Մարաշոյ[7]։ — Երեցուն առաջիցն միութեամբ վարարեալ Ջահանայ՝ յարեւմտից կուսէ Ալպիստան քաղաքի խաղայ ընդ հարաւ ընդ խոխոմս լերանց, և անցեալ ընդ անձուկ կիրճս Ախըռ տաղ լերին, (որոյ կատարք կամարաձև յիրար մերձին 'ի վերուստ), իջանէ 'ի կողմանս Մարաշոյ, յորմէ և անդր ընդլայնի հովիտն. և ոչ շատ հեռի 'ի յիշեալ քաղաքէդ ընդունի յահեկէն՝ յարեւելից՝ զգետակն Ագսու. իսկ յաջմէն՝ յարեւմտից՝ թուի նախ ընդունել գետակ մի 'ի սահմանաց Զէյթունի, ապա զԿապապանայ գետակն, և ստորեւ 'ի դաշտամիջի զՍաւոյ ջուրն, Ամնձուկ ըստ Հ. Ինճիճեանի. յորմէ և անդր ոչ նշանակի կարեւոր ինչ օժանդակ, այլ յորդոր ընթացիւք անցեալ առ Մըսսաւ և մերձեալ 'ի ծովեզր՝ դառնայ ընդ արեւելս, և յՆԼ. Հր. Այասայ՝ առ Գարադաշ հրուանդանաւ թափի 'ի Ծոցն Հայոց, իբր 20 մղոնաւ հեռի 'ի հին բերանոյն՝ որ էր յարեւմտակողմն մերձ 'ի բերան Կիւդնոսի. նաւք 'ի ծովէ ելանէին ընդ նա մինչև 'ի Մսիս. իսկ զարդիս հանգոյն Սարոսի յառաջեալ է ցամաքն ձևացեալ 'ի նիւթոց վարելոց յալեացն՝ հանդերձ ողողակ հողովք դաշտագետնոյն, և խցեալ և անհետացեալ են նաւակայքն։

Ցոլորտս Հայոց ծոցոյն որ յելից կայ Ջահանայ, չկան մուտք կարեւոր ինչ գետոյ, այլ գետակք աննշանք և անանուանք ըստ մերս ծանօթութեան. յորս գլխաւոր իցէ արդեօք եկեալն յԱմանեան լերանց և 'ի Հս. Պայասայ թափեալ 'ի ծով, Տէլի-չայ կոչեցեալ, և համարեալ Պինար նախնեաց, Pinarus. առ որս յիշի միւս ևս գետակ Կարսոս (Carsus), և համարի կոչեցեալն այժմուս Մէր-

1 Ըստ Իտիպ Ճանապարհագրի ուխտագնացութեան Մէքքէի։
2 Այսպէս կոչէ Չիհաչէֆ։
3 Ֆավռ և Մանտրոյ։
4 Զոր Եւրոպացիք ծեքելով կամ լաւ ևս առել՝ 'ի հարևանցի և աղաւաղ լսելով՝ գրեալ են Քէրքէնչէտ. իսկ հնագոյնն 'ի Նոտա Պօղ Ղուկաս՝ գրէ Քէրքէչի, Quirquigy.

5 Էնգուլրրահ (Բ. 72) գրէ Alaguga.
6 Ի հնաւանդ թարգմանութեան բանի միում զգետոց, յիշէ 'ի Կիլիկիա Պարադիսոս գետ, և ասի դրախտ լինել. զոր համարիմ նոյն ընդ Պառատիսայ. թուի նոյն և յիշեալն 'ի Պլինեայ (Ա, 22) Պարադիսոս, Paradisus.
7 Լը Պօ, Պատմութիւն Արեւելեան կայսերաց, ժԳ. 290։

ցեզ կամ Մերգեց, 'ի հարաւոյ առաջնոյն։ Ընդ մէջ Այասայ և գոգոյ Ծոցոյն խնդրելի է գետակն Քլորոս (Chlorus) կոչեցեալ 'ի Պլինիոսէ, (Ե. ԻԲ.)։ — Իսկ զծովեզերեայց Քարուսն Կիլիկիոյ և զՊամփիւլիոյ մանր գետակս յիշեցաք յառաջն սակաւուք. յիշեսցուք յետոյ և զայլս 'ի տեղաքննութեան իւրաքանչիւր վայրաց։

8. ԲԵՐՔ ԲՈՒՍԱԿԱՆՔ. — Զանազան բնութեամբ ունելով մասունս երկիրն Կիլիկիոյ, 'ի վաղուց հռչակեալ է քաջարգասաբերութիւն հարթածաւալ մասինն, այսինքն Դաշտայինն Կիլիկիայ (Πεδιάς, Cilicia Campestris), որ և Յատուկ Կիլիկիա (Cilicia propria). և է բովանդակ ստորին հովիտ երեցուն հզօր գետոցն, Կիւդնոսի, Սարոսի և Ջահանայ, իբրև 50 կամ 60 մղոն ընդ երկայնն՝ յարևելից յարևմուտս, նուազագոյն ևս՝ իբրու երիր մասամբ կամ կիսով չափ՝ 'ի հիւսիսոյ ընդ հարաւ։ Միջագետք Սարոսի և Ջահանայ յատկապէս կոչին այժմ ՉՈՒԳՈՒՐ ՕՎԱ (Խորադաշտ), վասն զնստագոյն դրիցն, 'ի հնումն կոչէին Ալէյեանն դաշտ ('Αλήϊον πεδίον, Campus Alejus)։ Թէպէտ չէ յոյժ ընդարձակ դաշտագետինն Կիլիկիոյ, գոլով իբր 1500 մղոն քառակուսի, աւելի կամ պակաս, այլ յամենայն ժամանակի համարեցաւ իբրև մի 'ի պարարտագոյն մասանց երկրի, և ըստ հին աշխարհագրին մերոյ՝ « Է ամենաբեր հանգոյն երկրին Յորդանանու ». և ըստ ոմանց՝ նման նեղոսական երկրին Եգիպտացւոց. քանզի և հանգոյն իմն մեծին այնորիկ գետոյ՝ վարեն և գետք Կիլիկիոյ հող քաջաբոյս. և բովանդակ դաշտագետինն ողողակ է բուսաբեր հողով, իբր 25' 'ի խոր. որ և օժանդակութեամբ հարաւային դրիցն, ընդ մէջ 36-8 աստիճանաց լայնութեան գոլով, հարթ հաւասարութեամբ ծովակողմանն, և հարաւաշունչ նորին սղոխիւք ամոքեալ՝ ծնուցանէ զամենայն պտղոյ բերս սննդեան, հանդերձ զուարճալեօքն։ Յիշող անգործարան նիւթոց երկրին Րաբունին մեր Թովմաս՝ զայլն ևս յիշելով միանգամայն գլխաւորէ. « և այլ բիւր բարիս անթուելիս »։

Ի բուսականն ցեղապետութենէ հարևանցի յիշէ նա զանտառս, « և Սինոպար 'ի փիճոյ ». որովք իմանայ անշուշտ և զմայրս և զեղևինս. իսկ 'ի պտղաբերացն 'ի պէտս պարէնի և զգեստու, ասէ. « Ունի միրգս, զԽնձոր և » զՏանձ, զՍալոր և զԾիրանն, Թուրինջ և Նուռնս, Նարինջ » և Լիմոնն... Բամբակ և Ապրիշում... Մուզուզայս, և » Շաքալուր, Հաճար ցեղ հազար[1] ու Զաֆրանն, Վարդ » և Մուրտ և Մանուշակ և Եղջիւրի ծառ, Զիրապտուղ » և Աղտոր, Նուշ և Արմաւ և կաղինն-արքայ, Ընկոյզ և » Նուռն և Սարէկ, Մանանեխ և Պրեխ, Ձմերուկ գեղեցկախայտ և Կօրայ, Սերկևիլ և Յունապ և Կասկ և Հոյն » յանտառի »։ Մոռանայ զկնճիր, և զՇաքարի եղէգն որ յաջողէ արդ 'ի ջերմագին կողմանս դաշտին, և զԲրինձ, զոր ճախնային կողմանքն քաջ սնուցանեն. պակասէ և չքնաղն հանուրց՝ Այգի, յայժմու քննողաց ևս ոչ յիշատակեալ ընդ կարևոր բերոց, որք 'ի հասարակի առ անխնամ մշակութեան և ոտնակոխութեան երկրին՝ նուազեալ են յոյժ, և ամենաբեր երկիրն այն՝ սակաւաբեր իսկ մարթի կոչել. բայց զի գոյին այգիք 'ի հնումն՝ վկայեն և յիշատակք ինչ վաճառուց առ հարստութեամբ Ռուբինեանց. և զի դարձեալ չէին առատք՝ ցուցանեն նոյնք. զի Վենետկեցիք և Գենուացիք վաճառէին զինի 'ի հրապարակս Հայոց. նա և մերձաւորութիւն Կիպրոսի՝ որ զազնիւ գինին առատապէս մատակարարէ, և սերտ յարընչութիւն մերայոց ընդ Լուզինեանց տեարց կղզւոյն՝ թուեցուցանեն ոչ այնքան փութկոտս և կարօտս զԿիլիկեցիս մշակութեան այգեաց, առձեռն պատրաստ ունելով զայգիս դրացեացն. առ որս ('ի Կիպրոս) յիշին ուրեք ուրեք Հայկականն այգիք (ἀμπέλι τὸ 'Αρμενίας, Erminesques ըստ Փռանկաց), զի 'ի Հայոց դարմանեալք էին, և կամ մանաւանդ ըստ տարազու Հայոց։ Յիշի յայնժամ և Զամիչ[2] 'ի վաճառս հանեալս յերկրէն Կիլիկիոյ։ Ի նախնեաց Պլինիոս յիշէ (ԺԴ. 11.) զեփեալ գինին Կիլիկիոյ, որ ազնուագոյն համարէր յետ Կրետեայն։ Առ մեօք անգղիացի սեպուհն Պարքըր տնկեաց այգիս մշկահոտ խաղողոյ և յաջողեցաւ։ Յիշէ սա և ազգ մի խաղողոյ՝ որ հազիւ հասունանայ 'ի վերջ կոյս տարւոյ։ Սոյն այր եմոյծ յերկիրս յայս և 'ի պտղատուաց՝ զԴեղձ և զԾիրանն նրբակեղև և զկեռասի, զոր արդարև իսկ չտեսաք 'ի վերոգրեալ ցուցակի Րաբունւոյն մերոյ. և 'ի խաւարտից՝ զկանգառ, զՊոլտիկ և զՍլոռն, զորս նոյնպէս դիւրաւ ընկալաւ գետինն. բայց վայրենին կանգառ՝ իբրև զմոլախոտ առատութեամբ աճէ ընդ բովանդակ երեսս դաշտին։ — Ի կարգի խաւարտից կամ հիւթեղ պտղոց յիշելոց 'ի Թովմայէ՝ Պրեխն որ է Պատեխ ըստ Արաբաց՝ է Սեխ ըստ մեզ, այլ ըստ ոմանց՝ ազգ ձմերուկի. Ասար բժիշկ զերկոսին միանգամայն ասէ անուամբդ, Սեխ և Խարբզակ։ Կօրայն ծանօթ է յարևմտեան Հայս, ազգ ընդ մէջ վարընգի և սեխի։ Յազգակցաց սոցին ջրուորագունից է գեղեցկախայտ տեսակն Ձմերուկ՝ ցանկալի ընծայեալ աչաց տեսութեան։ Յազգէ խաւարտից յիշէ Պլինիոս զՀազարն կիլիկեանն մեծատերև և գռուզ[3], Գռզիկ կոչեցեալ և 'ի նորումս 'ի Հայոց, և թարգմանեալ Lactuca crispa.

Միւս ևս պատուական բերք յիշեալ և 'ի Թովմայէ՝ է Զիթենին, որ և ըստ այգեաց սարասի թուի ոչ քաջ խնամեալ 'ի մերայոց. զի և յօտարաց Իտալացւոց բերեալ լինէր ձէթ այսր 'ի վաճառ. գտանին և արդ ձիթենիք վայրենիք անտառացեալք և հեղձեալք 'ի թաւ մայրիս, առաւել յաճախութեամբ 'ի միջոցի Տարսոնի և Սելևկիոյ, ընդ սահման առաւել քան 100 մղոն երկայն, և ոչ սակաւ մղոնք 'ի ծովափանցն ընդ լեռնակողմն կոյս. այլ սակաւ ինչ քաղեն տեղաբնակքն, նա զի և վայրենացեալ են ծառքն և ոչ պատուաստեալք։ — Իսկ 'ի վաղուց անտի յիշեցելոց բուսական բերոց՝ անուամբ առուեստարկեալ նիւթոյն՝ Ապրիշումի, յայտնի թթենին, որ և արդ առատապէս աճէ. այլ ոչ ըստ այնմ և ազնիւ բերքն մետաքսի. քանզի առ սաստկութեան տապոյ օդոց

1 Յօրինակին գրեալ է « Հաճար, ցեղ, ու զԶաֆրան »։

2 Uve Passe d' Erminia. Բեկոլոդդի, գլ. ՀԴ։ Անընդմէջ յառաջ քան զայս բան կարդէ հեղինակս և զԳինի Սերկևլէ, Vino di Cotogne, որով թուի ընուլ Հայոց զպակասութիւն բերոյ այգեացն, և արդարացուցանէ զյիշատակ սերկևլի 'ի Րաբունւոյն Թովմայէ։

3 Et ecce quum maxime cœpit irrepere sativis admodum probata, quæ *Cilicia* vocatur, folio Cappadocæ, nisi crispum latiusque esset. — Plinius, xix. 38. — Րիվոլա, Բառգիրք Հայ-Լատին։

յաճախ ապականին և սաստկին որդունք չերամոյ. սակայն և 'ի վերայ այսորիկ հանեն սակաւ ինչ ապրիշում, և գործեն խոշոր մետաքսեայ շապիկս։ — Ի պատուական պտղոց՝ թզենի ոչ յիշի 'ի Թովմայէ, յայժմեայցս՝ վայրենին. բայց հինն Պլինիոս ասէ տեսակ մի լինել անդ՝ որ զպտուղն բերէ ընդ տերևովք, իսկ որ գայ զկնի տերևոց՝ ոչ հասունանայ։ — Ոչ յիշի արդ ընդ արգասաւորս և Արմաւ, որ երբեմն ('ի Ժ դարու) անտառացեալ իսկ ասի առ Անաւարզայիւ. զարդիս հազիւ սակաւ թուով գտանին առ Ատանայիւ, և նուազունք ևս 'ի սահմանս դրանց Կիլիկիոյ և Ասորւոց։ — Առատագոյն 'ի պատուական բերս երկրին և հռչակեալ 'ի վաղուց՝ է Բամբակն [1], որով մարթէր մրցել ընդ քաջաբերագոյն կողմանց երկրի և չափ մեծ հայթհայթել, եթէ կանոնեալ և չափաւորեալ էին և վաստակն և մաքս. զի յետինս ծանր յոյժ ասի, զատ 'ի տասանորդէ բովանդակ բերոցն՝ զոր պահանջէ արդ պետութիւնն. տասանորդ մի առնու և քաղող բամբակին, միւս ևս տասնեակ՝ զլտողն 'ի սերմանէն։ Տարեկան բերք բամբակի հաշուին 20,000 կենդինար, և հասարակօրէն առաքի 'ի Տրապիզոն և 'ի Կարին։ Բեկոլոդղի՝ որ գրէր յաւուրս յետին թագաւորաց մերոց՝ զբամբակ Կիլիկիոյ յետ Ամանոսին ընտրելագոյն ասէ քան զՊաղեստինոյ, Կիպրոսի, Մալդայ, Սիկիլիոյ, Բուլիոյ, և այլ կողմանց։ — Մի յառատ և յընտիր բերոց է և տիրագոյնն 'ի սնունդ՝ Ցորեան, յորմէ ժողովեն 400,000 քոռ (քիլէ) և աւելի, և վաճառի քոռն [2] 60 կամ 80 ղրուշի. ընտրելագոյն համարի ցորեանն Գառամանի՝ գերմակ ալերբ, վասն որոյ և թանկագին է։ Կէս ցորենոյն առաքի յԱսորիս։ — Գարի ժողովի 150,000 քոռ, ըստ Պարքըրի, և 'ի թանկութեան ցորենոյ պատրաստի 'ի հաց, և արժէ քոռն՝ 40-60 ղռուշ։ Նոյն այր զբերս Կնջիրի ասէ 15-20,000 քոռ, և ամ ըստ ամէ առաւելուլ վասն չահաբերութեանն։ — Կտաւատ 40,000 քոռ, և վաճառի հօխայն մի ղռուշ։ Յիշէ և զՄեղրամոմ՝ կէս բուսական բերք, թէպէտ ոչ շատ առատ, 8 կամ 10,000 հօխայ միայն, այլ ընտիր է յոյժ և վաճառի իբր 18 ղռուշի։ — Յիշելի է և Սակամունի, որ լինի 'ի Տաւրոսական լերինս, և խէժն խնդրի 'ի բնակչաց Լաւոդիկեայ։

Ի յիշատակեալսն 'ի մերոյս Թովմայէ ինչ ինչ անծանօթ մնայ առ յինէն. որպէս, Մուզուալա, զոր կարծեմ գոլ Մէվզ Արաբացւոց, որ է Ադամաթուզն կամ Պանան Հնդկաց, զոր և Լատինք Musa կոչեն։ Յիշատակէ և այլ ոք 'ի նախնեաց. « Մօզ, որ է Քիլա, միրգ մի է՝ որ յԱ-
» լայեայ [3] գայ, և զինքն 'ի Պասր(այ)ոյ այլ բերեն »։ Իսկ Մանենիս ոչ կարծեմ զմանանեխն ծանօթ, այլ պտղանման ինչ. 'ի բժշկական գիրս մեր ուրեք Մաննեխ մեկնարանի Սպիտակ կոտմաճ հուեղ. և 'ի հնագոյն բժշկարանի՝ Սպիտակ կոտման հնդոյ համանիշ գրի Հարաւպպլի?, որ և յաւելու ինձ տարակոյս։ — Սարեկն՝ յազգէ ծառոյն յորմէ կախեալ ցուցաւ խոյն ողջակիզելի փոխանակ Իսահակայ, ըստ Լատինաց՝ տեսակ է շլորենւոյ կամ մամխոյ, ըստ այլոց՝ այլազգ ինչ թուփ։ — Պտուղ մի ևս Ուրկումիլ կոչեցեալ յիշէ մերս Հ. Ինճիճեան, սալորանման դեղնագոյն անուշահոտ, կորիզ ունելով նման ծիրանի, որոյ տհասն վարի 'ի պէտս թթուի 'ի կերակուրս։ Այլք 'ի յիշելոյն ծանօթագոյնք են, և գրեթէ ամենեքին վկայեալք և յայժմուս։ Անգղիացիքն Պարքըր և Էնգուըրտհ յիշեն զխնձորն և զծիրան, զնուշ վայրենացեալ 'ի ծերպս քարաժեռից, ընդ նմին և զմաննաբեր թուփն (manna-asch), որ թերևս վերոյիշեալ Մաննեխն իցէ, և զեղջիւրենի անտառացեալ առ Ատանայիւ. նոյնպէս և պուրակս նարընջի և լեմոնի. որոց ազգակից հարկ է թէ իցէ և դասակցեալն նոցին Նունա։ — Ընդ պիտանի բոյսս դասելի են և բժշկականք ոչ սակաւք, որ և առատագոյն ասին լինել 'ի Նուր լերինս, մանաւանդ գեղեցիկ Յակինթք և Լօշտակ իսկ. յայսմ լերին, ասեն, արարացի գիտնական բժիշկն Լօքման՝ հաւաքէր ազգս ազգս խոտոց և ծաղկանց 'ի պէտս դեղոց։ Յիշէ և Պլինիոս (ԺԲ. ԼԵ, ԼԶ.) յԱմանեան լերինս հիւթաւոր բոյսս պիտանիս 'ի դեղ և յօծումն, զՔաղբան կամ Անգուժատ, որ և Բարկժատ, և զՍտիւրակ, որոյ բոյս Ծքլարի տակ կոչի 'ի մերոցս։ Նոյն գիտնական ազնուագոյն քան զայլոց կողմանց ասէ (ԻԲ. ԺԱ.) զՄատուտակ կամ զՄարուխ Կիլիկիոյ (Glycyrrhiza). նոյնպէս ընտիր քան զամենայն՝ Ջոպայն տաւրոսական լերանց Կիլիկիոյ, որ տորեալ 'ի ձէթ՝ բուժիչ լինի քորի գլխոյ և ոջլահարի։ Իսկ Բժշկարանք մեր գովեն զՕշինդր Սսոյ և Տարսոնի։

Այսքիկ 'ի մրգաբերաց և յուտելեաց և 'ի պիտանեաց. իսկ անտառայնովք ևս ոչ սակաւ ճոխ է երկիրս Կիլիկիոյ, թէպէտ և բնախօսն մեր ազգային միայն զՍինոպար 'ի փիճոյ [4] յիշէ. և այն որպէս թուփ ոչ 'ի սակս փայտին, այլ որպէս պտուղ՝ զպիստակ իմանալով. զի այսպէս իմանի 'ի յոլովից Սինոպարն՝ Սենեվպիր ըստ Արաբաց, և փիճին ըստ ոմանց է Pinus sativa, ըստ այլոց Fagus։ — Գլխաւոր զարդ և թագաւոր անտառաց Կիլիկիոյ մարթ է ասել զնախայիշեալ Մայրս, մրցողս՝ թերևս և յաղթողս Լիբանանեանցն հռչակելոց, գէթ յոլովութեամբ. և երկու ազգք են նոցին՝ ըստ գունոյ ոստոցն, ոմն կանաչ և ոմն գորշագոյն, և գտանին մինչև 'ի 5300′ բարձրութեան. զատ յայլ պիտոյից վասն առատ կռիզոյ կամ հիւթոյ նոցին (յոր սակս Գարբաճ աղաճը [5] կոչին 'ի Թուրքաց), վարին երբեմն 'ի շինութիւն նաւուց, իբրու ընդարձյս ունելով և զնիւթն ծփելի։ — Բազում ազգք են և Եղևնեաց, Սոճեաց և Նմանեաց. նոյնպէս և Կաղնեաց, յորոց սակի Կաղնին բալուտ [6], Quercus Ballota. Կաղնին կարմրաբեր, Q. Coccifer (Գըրմըզ), որոյ վաճառ անուանի էր և 'ի հնումն 'ի կողմանս Կիլիկիոյ. Կաղնին այծակնն [7], Q. Aegylops ըստ մեզ խոզկաղնի. Կաղնին ժանտաճոտ, Q. Infectoria։ Նոյնպէս և ազգ ազգ Գիհի ծառոց, յորս գլխաւոր Բարձրաճաղկն անուանեալ

1 Սանուտոյ Ա. Ն. Դ. գրէր յաւուրս Դ Լևոնի. « Terra Arme- » niæ quæ Bombicem fructificat in magna quantitate ».

2 Քոռ Գարամանիոյ ութպատիկ մեծ է քան զԿ.Պօլսոյ, որ կշռէն 33 լիդր՝ ըստ տասնորդական չափուց։

3 Որ է Կոռակեսիոն Յունաց. տես 'ի Տեղագրութեան. ոչ յիշեմ 'ի բժշկարանաց թէ այլուստ է այս վկայութիւն։

4 Թերևս անկ իցէ ընթեռնուլ Սինոպարի։

5 Ըստ Բժշկարանի միոյ «Ղաթրանին ծառն՝ հայերէն Տրախոյ» կոչի։

6 Բալուտ սորին եփեալ ուտելի է որպէս շագանակ։

7 Պատկեր սորին որ յէջ 15, է կէս բնականին մեծութեան։

(Juniperus excelsior), որ պսակէ զբազում միջակ կատարս լերանց երկրին թխորակ տերևօքն։ Ջցածագոյն լեռնակս ծածկեն Մրտենի, Մարուզենի (Arbutus), Դափնենի, փլոմիս (Phlomis), Շքյար (Styrax), Քօշ–մօրուք (Cistus), Ցասմինենի, և խոնարհագոյն ևս 'ի դաշտակողմն իջանելով փշատի, (Օլէանդր) Դափնեվարդ, և այլն։ Գտանին և մեծամեծ Մօսիք. այլ զի յանխնայ տեռազերծ առնեն զնոսին 'ի կեղևոյն' առաքելով 'ի կողմանս Ցունաց, վտանգ հասանէ անչքանալոյ գեղեցիկ ծառոցն։ — Ցիշեսցուք և զԳեղձին (Smilax aspra), զոր 'ի Կիլիկիոյ ընդունէին Հռովմայեցիք. հանգոյն բաղեղան բերէր խիղբս, ողկոյզս և անուշահոտ ծաղիկ սպիտակ, այլ ոչ էր ընդունելի 'ի պսակ զոհից և տօնից. վասն զի աղջիկ մի համանուն' ասէ Պլինիոս (ԺԶ. կգ.), հարեալ 'ի սէր Քրքում պատանւոյ' այլափոխեալ էր 'ի ծառ գեղձի։ — Բժշկարանք մեր յիշեն ծառ մի արաբացի անուամբ Սֆլակ (գրեալ և Նֆլ), թէ « ի Սիս լինի. և որ զինքն »(այնու) միս խորովէ և ուտէ' մեռնի »։ — Ցատուկ ազգք մայրեաց ցարդ 'ի գաւս Կիլիկիոյ միայն յայտնեալք' չեն նուազունք. յորս երկու տեսակք Մոճեաց յանուն նախ նշանակողին Ֆէնցլեայ' Pinus Fentzlii, անուանեալք, գտանին 'ի բարձր լերինս 'ի միջոցի 5-6000' ոտից բարձրութեան. Նշդարմախ կիլիկեան, Populus Cilicia Ky, (այսինքն Քոչի), 'ի 4-5000' բարձրութեան 'ի կաւոտ կողմանս։ — Ցազգէ կաղնեաց' հանդերձ նախայիշելովքն' գտանի Եղևնամնաճն (Q. Abietum) առ ակամբք Կիւղնոսի 'ի 4500'. ուր և կ. Մայրևոր (Q. Cedrorum Ky), և կ. Խրիկեան (Q.Ibicis Ky), ց'4800'. կ. Ունկերեան (Q. Ungeri), առ Անաշայիւ 'ի 4000'. կ. Էնրէնպէրկեան, (Q. Ehrenbergij), 'ի Կուկլակ և առ Լամբրունիւ յ'2500'. կ. վալլոնեան, (Q. Vallonea Ky), 'ի սահմանս Լամբրունի, յ'3000'. կ. Կէօտէլեան, (Q. Goedelij), առ Անաշայիւ, 'ի 4000'. կ. Ասորի, (Q. Syriaca), առ Տօրագ գիւղիւ. կ. Փիռամեան, (Q. Pyrami Ky), առ Ատանայիւ. կ. Տաւրոսական, (Q. Tauricola), յ'3000'-3500'. կ. Հաաս, (Q. Haas Ky), մերձ 'ի Կուկլակ յ'3800'. և այլն։ — Թէպէտ յիշատակ այսոցիկ այլ և այլ տեսակաց կաղնեացդ հազիւ թէ անուամբ և ոչ այլով իւիք ծանօթասցին ընթերցողաց, այլ գէթ պատուեսցին իբրու յայտարարք բուսական ճոխութեան երկրին' զորմէ բանս է։ Պայծառագոյն ևս բացատրեաց զայտսիկ մտադիւր քննութեամբ' Քոչի բուսագէտ Աւստրիացի, (D.r Theodor Kotschy † 1866,), որ չորիցս' 'ի միջոցի 1836-1863 ամաց. եկն խոյզ և խնդիր առնել 'ի լերինս և լեռնահովիտս Կիլիկիոյ, և եգիտ և ծանոյց զատ յայլոց' 820 ևս նոր տեսակս մեծ և փոքր բուսոց 'ի զանազան ազգաց, որք ցայնժամ չև էին այլուր յայտնեալք, նշանակելով զմիոյ միոյ տեղի ուր և եգիտն, և զչափ բարձրութեան վայրուցն յերեսաց ծովու. յընդարձակ տախտակի յանդիման կացուցանելով զլերինան և զլեռնահովիտս' նշանաւ բարձրութեան նոցին և տեղեաց 300 տեսակ բուսոց հանդերձ դրիւք սակաւուց ոմանց չինից։ Կամ եղև և մեզ զայն տախտակ ընծայել 'ի բնագրութեանս. այլ գործ է հասկանալ զզանազանութիւն բուսոցն նշանակելոց. որ զի և 'ի վեր քան զկար մեր էր 'ի հայ փոխել զանուանս նոցին, և մանաւանդ հասկանալի առնել, ստիպիմք' նախ, զամենայն թողուլ ըստ հեղինակին յուսումնական հասարակաց լեզուն, որ է լատինն, զոմանս սոսկ տառադարձութեամբ 'ի հայ փոխեալ, և զոլովս թարգմանեալ ըստ յոյն կամ լատին բառիցն իմաստից,



3. Խոզկաղնի. Quercus aegylops.

յաւելլով և զփռանկ անուանակոչութիւն բուսոցն, և զոյզն ինչ ծանօթս տալով ուրեք զոմանց։ Դարձեալ, յաւելաք 'ի դիւրութիւն գիւտի բուսոցն ըստ տեղեաց տեղեաց' և բառակարգ ցանկս ըստ լատին լեզուի և ըստ հայումս. քանզի Քոչի միայն մի ցուցակ կարգեալ էր յեզերս տախտակին, ոչ այբբենական կարգաւ, այլ ըստ բարձրութեան տեղեաց բուսոցն։ Թողումք հմտագունից և սիրողագունից' առաւել պարզաբանել և ճշգրտել զանուանսն, որ ըստ նախնեաց և որ ըստ նորոց յարմարեալ' յայլոց կամ յինէն. զյետինքս' աստեղանշաւ որոշելով 'ի հին հայկական անուանց։

Բուսաքնինն աւստրիացի համառօտէ զտեսութիւնս իւր, ըստ բարձրութեան և ըստ բնութեան երկրին նշանակելով զգլխաւոր ցեղս բուսոց, սկսեալ 'ի ծովափանցն, ուր գետինն աւազախառն է և ճախճախուտ. և սակաւ ինչ յառաջելով տարածանի դաշտն գրեաթէ մերկ 'ի դալարւոյ, թէպէտ և կարող 'ի բերել. անդ 'ի կէս փետրուարի, ասէ, երևին առաջին փթիթք ազգաց շուշանաց (Liliaceæ), և խառածաղկի (Ranunculeæ). իսկ յապրիլի ծաղկազարդ երևի բովանդակ երկիրն ց'1000' բարձրութեան. 'ի ծաղկելոցն 'ի կէս յունիսի յայտ լինի' զի մեծ մասն նոցին համազգի է ծովափնեայ բուսաբերութեան

Միջերկրականին, և սակաւք են յատուկք այսր երկրի [1]. իսկ Հաղուագիւտք՝ Պիստակն Պաղեստինեան, Բարտի կամ Քեղի արևելեան (Alnus Orientalis), Լոդենի Դուռնըֆորեան (Celtis Tournefortii Lam.)։ — Միջոց 1000-2000′ բարձրութեան՝ որ ալէձև է և բլրաւէտ, 'ի գարնայնի ընծայէ Մրտենիս, Դափնեվարդ, Նկուն Բևեկնիս, և դուն ուրեք տեսակս կաղնեաց և սօճից։ Ստորին սահման մայրեաց որ յ'2000-3000′ միջոցի՝ բերէ յաւէտ Սոճիս և Թեղօշս (Pinus Carica Don.), ազգս ինչ կաղնեաց [2], և առաւել քան զսոսին՝ Մայրս լիբանանեանս, որ յ'3000′ բարձանց և 'ի վեր անեն, և գորշագոյն մայրս։ Ցերկրորդում սահմանի անտառաց՝ որ ժամանէ ցալպեան բուսաբերութիւն, ըստ այլ և այլ աստիճանի բարձրութեան՝ զանազանին փոքր 'ի շատէ և ծառքն. 'ի 4-5000′ բարձրութեան յաճախեն Սևաւ Սոճիք և Մախրիք, 'ի լեռնահովիտս՝ կաղնիք և գիհիք. 'ի հասարակի սևագոյն




4. Թէոդոր Քոչի Բուսաբան. Th. Kotschy.

են բուսականք այսր աստիճանի. յորմէ և 'ի վեր ց'6000′ անեն Սոճիք-չարեկք կամ Բևեռնիք (Pinus Laricio), և յաւէտ մայրք 'ի քարուտս, Եղևինք 'ի կակղագոյն վայրս, և երկու տեսակ Գիհեաց՝ Բարձրաձաղկն և Գիշահոտն (Juniperus Excelsa, Jun. Fœtidissima), յարձակագոյն տեղիս. և կարմրագոյն Սոճի 'ի բարձրագոյն դիրս։ Ի լայնանիստ քամակս լերանց մայրք ժամանեն ց'6400′ բարձրութեան, 'ի կողմն՝ ց'5000′։ — Միջոց 6-8000′ բարձրութեան սահման է զմրխտագոյն դալարոյ և երփներանգ ծաղկանց, է որ յապառաժս և է որ 'ի կակղագոյն կողմանս, թէպէտ ոչ յոյժ խիտ առ խիտ, այլ և ոչ կարի շատ ցրուեալք. 'ի հասարակի խոտեղէնք են բոյսքն [3]. իսկ Թուփք միայն 'ի խորաձորս և 'ի ջրափունս անեն, մանաւանդ որ յազգէ Հովանեկաւորաց (Umbelliferæ). 'ի միջոցի 6-7000′ անեն յաւէտ բոյսք 3-4 ոտնաչափ բարձունք. հասարակ բոյսք այսր վերածառեան միջոցի են այլ և այլ տեսակք *Գառնամանուկի (Senecio) և *Փշականգառի (Cirsium)։

Վերին ալպեան սահմանք որ յ'8000′ ոտից և անդր՝ քարաժայռք են. յառաջնում աստիճանին (8-9000′) տակաւին երևին յաւէտ ընթերակից բոյսք, 'ի ծործորս, 'ի ջրարբի տեղիս և 'ի գոգս բարձանց. յարդեսեան գետնի յաճախեն Խազիրանք չքնաղք (Astragalus amænus), *Հզօրիք (Potentilla), *Առնասպար ոլիմպիական (Androsace olympica), ազգ ազգ *Սևկեղևայ (Scorzonera), Թերևս Սինձ խոտ, Օշնան (Saponaria), *Բզնածարիր (Heracleum pastinacea)։ Առ աղբերականմբք՝ կոկոռձիկք (Chamæmelum), *Մուճակ (Crepis pinnatifida), Սեզ կոճղէզաւոր (Poa bulbosa), և այլն։ Ի սահմանս ձեան ծիծաղի ոսկէգոյն Խառածաղիկն ցածուն (Ranunculus demissa). իսկ 'ի ծերպս քարաժեռուցն առատօրէն անեն Ճլեկեկ ատամնաթերթ (Silene odontopetala), *Արաբիկք (Arabis albida), *Քարկոտրուկ (Saxifraga Ky.), *Խոզեղընդի (Scrophularia), կոտեմ անցօղուն, *Առնասպար ոլիմպիական. և այլք նմանիք։ Իսկ 'ի վերագոյն եւս գահս 9-10000′ից, գտանի Ճլեկեկ երկրածած, տեսակք ինչ Խազիրանի, Եւնոմիա հակատերև (Eunomia oppositifolia). յատուկք բարձրագոյն գահից են Աբարբինե խիտ (Euphorbia densa), Մանուշակ Թանձրատերև (Viola crassifolia), *Արեգնիճ (Erysimum Ky.), կորնգան կարմրասպիտակ, և այլ տեսակ, և այլն։ Նշանական իմն է բուսոց բարձանցս գոյն սպիտակ և գորշ [4], հանգոյն գունոյ վայրացն յոր հաստատեալ կան։ — Ի ջրաւէր բուսոց՝ հին հեղինակն Պլինիոս յիշէ [5] 'ի Կիլիկիա՝ զկոկոռն (Nymphæa nelumbo), որ բերէ բաճիճ բակլայաձև, և գտանի առատ յԵգիպտոս և յԱսորիս ևս։ Նոյն 'ի կարգի հոտաւէտ ննկոց յիշէ զՀիրիկ (Iris) կամ Շուշան վայրի [6], որոյ արմատ միայն անուշահոտ էր, և ընտիրն՝ յայնմ ժամանակի գայր 'ի Պամփիւլիոյ և յաւէտ 'ի Կիլիկիոյ. և հռչակեալն յամենեցուն Քրքում Կոռիկոսի։

Հակակողմն Պուլղար լերանց, այսինքն է հիւսիսային արևմտեան կողմն, այլազգ ունի կերպարանս. զի գետին բարձրաւանդակ է և բլրաւէտ ց'4500′, յորմէ և անդր իսկոյն վերամբառնայ անտառային սահմանն, յորում ռետնին անէ ց'7000′ 'ի բարձունս. 'ի քարաժայռ երեսս լերանցն՝ սեաւ չոճիք և սակաւ եղևինք և մայրք. միջոց 6500′ բարձրութեան սակաւափայտ է յոյժ քան զհարաւակողմն, և հազիւ ուրեք գտանին լոկ գիհիք, որ յոյժ առատ են 'ի հարաւային դիմին. արօտամարգքն ժամանեն ց'8400′։ Ի վեր քան զայն 'ի բարձրաւանդակի Կիւզէլթէփէի ց'9000′ սահման է ալպեան բուսաբերութեան, յորում՝ զի այլատեսակ են քարինքն՝ են և բոյսք նորատեսակք, որք ոչ գտանին 'ի հարաւակողմն լեռնագօտւոյն. այսպիսիք են տեսակ մի Ջղախոտ (Plantago dioritica), *Գառնամանուկ փառփառտերև (Senecio farfaræfolius), Տերեփուկք բաղմատեսակք, *Զանգակածաղիկ

1 Ցորոց սակի նշանակէ Lagonychium Stephanianum MB., Glycyrrhizopsis flavescens Boiss., Nothobasis syriaca. — Քոչի, 369։

2 Quercus Libani Oliv., Q. Cessis L., Q. Calliprinos Webb.

3 Որպիսիք են Tomasina, Heracleum platytaenium, և այլն։ Քոչի 371։

4 Lichtgraue, ըստ գերմանական բարբառոյ։

5 Պլինիոս, ԺԸ. 30։

6 Պլինիոս, ԻԱ. 19. Optimum Irinum... nunc e Pamphylia: sed Cilicium maxime laudatur, atque e septentrionalibus. — PLIN. XXI. 30.

կամ Կանթեղնիճ՝ Intibas մակակոչեալ, *Արեգնիճ (Erysimum) նորատեսակ, Շահոգրամ կաթնծաղիկ? (Diantus lactiflorus), եորնգամ կարմրապտուղ, Վուշն (Linum empetrifolium)[1], Վիկգն ներքնասպիտակ (Vicia hypoleucum), Զոսիմիա ցածուն (Zosimia humilis), և այլք: Ի 10000′ բարձրութեան յաւերժական սառամանիք են յայնմ կողման. և վասն առաւել անհարթութեան և ուղղորդութեան երեսաց քարաժեռիցն՝ սակաւ և անմատոյց խոտամարգք:

Ի բազմաթիւ ազգս նորատեսակ և նորանուն բուսոց, որք թերևս 'ի տեղագրութեան վայրուցն նշանակեսցին, յիշեսցից աստէն զազգս ինչ՝ յորոց բազմագոյն գտանին տեսակք 'ի գաւառանդս Կիլիկիոյ. զոր օրինակ, 'ի ցեղէ Շուշանաց՝ Շանխատոր (Ornithogalum) անուանեալքն, յորոց հինգ նոր տեսակս կարգէ բուսաբանն Աւսորխացի. խոնարհագոյն ըստ դրից՝ վեցթերթեանն (Orn. Hexapterum), առ Կիւլէկ գեօղիւ յ'3000′ բարձու. բարձրագոյնն (Orn. Aemulum) յ'8500′ 'ի կողմանս Պուլղար մաղարայի. Շրէշք եռատեսակ, յորոց մին յ'8400′ բարձու 'ի Կիւլէկ մաղարա. — յազգէ Կակաչից (Dipsaceæ) եռատեսակ *Գնտագլուխք (Cephalaria). — յազգէ Բարդաբարդից (Compositæ) քառատեսակ Հազարտերևեանք, յ'3000-6000′ բարձրութեան. Ակրրկարհայք (Pyretrum) եռատեսակ, *Գառնամանուկ (Senecio) եռատեսակ. Մեծ Տերեփուշկք (Centaurea) վեց տեսակ, յորոց մին Տ. Ոսկեվարս (Cent. Chrysolopha) գտանի ց'7500′ բարձրութեան. — յազգէ Զանգակաձևից՝ կանթեղնիձք 10 տեսակք, յորոց անուանադրեալն Կ. տաւրոսական անէ ց'8800′ բարձրութեան, 'ի վերոյ Պուլղար-մատէնի. — յազգէ Տորնից չորս տեսակք 'ի 4-6000′ բարձրութեան. — յազգէ Եղնջանից կամ Բոլոց՝ երեք տեսակք 'ի խոնաւ տեղիս Պուլղար մաղարայի. — յազգէ Շրթնաձևից (Labiaceæ) հինգ տեսակ Եղեսպակք, յորոց երկուք գըտանին 'ի Քէչիպէլի յ'8000′ բարձու. Եղինձամայրք եռատեսակ. — յազգէ Խստատերևոց (Asperifoliæ) Ալկանա (Alcana) եռատեսակ, Մկնականջ եռատեսակ, Եզնագի կամ Խոլնդատ քառատեսակ, ց'8000′ բարձրութեան. *Խոզեղլնգի (Scrophularia) եռատեսակ. *Վշեննիկ (Linaria) եռատեսակ. Վերոնիկ (Veronica) քառատեսակ, յորոց լերկագոյնն (Ver. glaberrima) գտանի 'ի կողմանս Պուլղար-մաղարայի յ'8400′, բարձրութեան. և միւս բարձրագոյն ևս յոյժ 'ի 10000′, և անդրագոյն ևս. — յազգէ Հովանեկաձևից՝ Նապատակաջ քառատեսակ. — յազգէ Մեկոնից՝ երեք տեսակք, յորոց մին 'ի քարաձորս Կուսկութայ յ'7-8000′ բարձու. — յազգէ Խաչաձևից՝ (Cruciferæ) Արաբիկք (Arabis) քառատեսակ. Վառվառուկք կամ Իշագեղք (Alyssum) քառատեսակ, յորոց մին արծաթածիլ (Alys. argyrophyllum) կոչեցեալ՝ գտանի 'ի բարձրագոյն Մէտտէսից լերին 'ի վեր քան զ'10000′. *Տափկի (Thlaspi) ց'8000′ բարձրութեան. *Տարաբեղիկք (Aethionema) եռատեսակ. *Կոկուկ (Isatis) եռատեսակ. — յազգէ Մեխակայնոց (Cariophylleæ) *Աւազենի (Arenaria) եռատեսակ, Ալսին (Alsine) եռատեսակ. Շահոգրամք վեց տեսակ, յորոց կարճաբուսնն գտանի յ'8500-9000′ բարձունս. Ճլեղեկք 13 տեսակք, յորոց ոմանք 'ի սահմանս Դրանց Կիլիկիոյ ժամանեն ց'9500-10000′ բարձանց. — յազգէ Գօճամօրուաց (Hypericineæ) եօթն տեսակք, յորոց մին գտանի 'ի բարձունս Իւչթէփէի անդր քան զ10000′ բարձրութեան. — յազգէ Դժնկաց կամ Ցակրեաց (Rhamneæ) երեք տեսակք. — յազգէ Վարդաձևից (Rosaceæ) *Հզօրիք (Potentilla) հինգ տեսակք, մինչև անդր քան զ10000′ բարձրութեան. — յազգէ Թիթեռնաձևից (Papilonaceæ) Հացհամեմք (Trigonella) քառատեսակ. Խազիրանք 11 տեսակք. մին մորթաւոր անուանեալ (Astr. pelliger) գտանի 'ի բարձրագոյն սարս, 'ի վեր քան զ10000′. միւս՝ ձիւնասէր (Astr. Chionophilus), Վիկգն եռատեսակ,



5. Astragalus Chionophilus. Խազիրան ձիւնասէր.

մին ներքնասպիտակ (hypoleuca) 'ի Պուլղար-մաղարա, յ'8000′ բարձու. — յազգէ *Հիրիկաց (Irideæ) Քրքում եռատեսակ, Սպիտակն՝ (Crocus candidus) 'ի Կիւլէկ մաղարա, 'ի 6400′ բարձու. միւս ևս տեսակ զոր յանուն իւր կոչեաց Քոչի՝ 'ի նոյն կողմանս յ'7000-8000′ բարձրութեան: Զո՞ր արդեօք յայսցանէ, կամ միթէ զընաւան ճանաչէր Բաբունին Թովմաս՝ որ ընդ բուսական բերս հայրենեացն՝ ընդ վարդի, մրտի և մանուշակի՝ յիշէ և զՋաֆրան, որպէս տեսաք 'ի վերոյ: Հին օրինակագիրք Հեյլէնք ասեն 'ի քարայրս Կոռիկոսի առատաբար բուսանել զքքմոյ, բայց յարդեացս քննութենէ ոչ ստուգի:

Ընդ քաղցրայիշատակ ծաղկունքս նշանակեալս 'ի մերազգի հեղինակէն՝ նշանակեսցին աստանօր և հրաշացեալքն յօտար և 'ի հետազօտ բուսաբանէն, սակաւագիւտ

[1] Այօրինքն, զի աերկքն նմանք են այնմ յունարէն բուսոյ՝ զոր Լատինք Calcifraga, կրաճեղձ, կոչեն, փռանկք՝ Perce-pierre, քարճեղձ:

փափկիկ *Առիւծթաթիկն (Leontopodium), որ յԱլպիս Եւրոպիոյ անուանի Edelweiss, Ալպիտակափառ, և անձկանօք խնդրի 'ի գեղեցկասիրաց, ասրաքստակ որակաւ և գունով, ճառագայթաձև ծաղիկ, աննման ծաղկան. և որ առ երի նմին գտաւ 'ի բուսաբանէն՝ միւս գեղադէշ ծաղիկ՝ *Անմոռացուկն Մկնականջ (Vergissmeinnicht)[1], 'ի սորս ութեք 8000' բարձանց 'ի կողմանս Դաչ-օլուգի, 'ի լերինս որ ընդ մէջ Տէլիկթէփէի և Գարլըպօղազի, և գեղեցկագոյն համարեցաւ ամենայն լեռնաբուսոց զորս տեսեալ էր Քոչեայ[2]։ — Գտաւ 'ի կողմանքս և չքնաղագոյնն և անհամեմատն չիկորսկ գունովն *Լերկածաղիկ (Anoplantus, Orobanchee) 'ի բարձր հովիտս Սաւռան գետոյ, որ և 'ի Մեծ Հայս ադանչացոյց զԴուռնըֆոր և զայլս 'ի հետաքննին ուղևորաց։ — Ոչ երկբայիմ թէ գերունակ հանճար Լևոնի Ա Թագաւորի՝ գիտաց յայսքան ծաղկանց և բուսոց ընտրել, տնկել և յարդարել դրախտ մի հիանալի՝ յոստանին իւրում 'ի Սիս. ընդ որ ադանչացեալ Վիլլէպրանտ գերմանացի հիւր նորին՝ որ մանրապատում նշանակէր զայլ դէպս, 'ի վեր քան զկար իւր ասաց զստորագրութիւն այնր հրաշազան պարտիզի։

## ԴՐՈՒԽԱԳ (Ա)

---

### ԲՈՒՍԱՑՈՒՑԱԿ ԳԱՀՈՒՑ ԿԻԼԻԿԻՈՑ

9. Ըստ վերոյգրելոցս (յէջ 15) թիւքն 1-300 որ 'ի տախտակիդ Բուսոց և Բարձանց Կիլիկիոյ, նշանակեն զտեսակս բուսոյն՝ որոց անուանք խնդրելի են յԱ Ցանկի. և զի նոյն թիւ գտանի կրկնեալ յայլ և այլ մասունս տախտակին՝ յայտ առնէ զի նոյն բոյս գտանի յայս և յայն նիշ կողման երկրին։ Տառքն Ա, Բ, ց'ԺԱ, ցուցանեն զմետասան աստիճան բարձրութեան գետնոյն, մի քան զմի 1000 ոտնաչափ վերագոյն. իսկ որ 'ի վերոյ թիւքն 1. 2. 3 և 4, կամայական բաժինք են պատկերին՝ առ 'ի դիւրագիւտ առնել զխնդրեալն ինչ բոյս։ Որ կամիցի գիտել թէ այս ինչ բոյս յորում տեղւոջ գտցի, խնդրեսցէ զանուն նորին լատինական յ'Բ Ցանկին, և ապա զոր հանդէպ նմին թիւն յԱ Ցանկին, յորում և զկնի անուանցն նշանակեալ են վերոյիշեալ տառքն Ա-ԺԱ, և չորեքին թիւքն. և ըստ այնց տառից և թուոց նկատելով 'ի տախտակին, յորում բաժնի նորին գտցէ զթիւն՝ գիտասցէ 'ի նմին կողման Գահուց Կիլիկիոյ աճել զայն բոյս։ Որ ոչ գիտէ զուսումնականն անուն, այսինքն զլատինականն, հարկաւորի հայել յ'Գ ցանկն՝ հայերէն, և անտուստ առեալ զհամանիշ լատին անունն՝ դառնալ յ'Բ և յ'Գ Ցանկս. բայց սակաւք 'ի բուսոց տախտակին արկեալ են 'ի կարգ Գ Ցանկիդ, վասն զի ոչ գտանին ստոյգ հայերէն անուանք նոցին. այլ և ոչ ամենայն կարգեալքն յայնմ վերջին ցանկի՝ գտանին 'ի տախտակին և յերկուսին առաջին ցանկս։ Սակաւուց ոմանց արդարև պիտոյասցի այս դրուագ բուսաբանական, և յոլովից՝ ցամաք, անպէտ և աւելորդ երևեսցի. այլ ոչ նոյնպէս և բուսասիրի ումեք ըստ Քոչեայ ախորժակաց։ Ի ծաւալել արդ և յազգիս պէսպէս ախորժակաց ուսմանց և գիտութեանց, ոչ յետնորդ վարկանիմ և զբուսականս, մանաւանդ որ 'ի հայրենի հողոյ վերընծայիցին։

Որք 'ի փակագծի տառք կամ կիսատ բառք առ լատին անուամբ բուսոյն՝ նշանակեն զանուանս բուսաբանիցն, որք գտին կամ ճառեցին զայն բոյս, յորոց զսակաւս ոմանս ևեթ կարգեցից աստանօր համառօտիւ, թողեալ զայլս 'ի քննութիւն մանրակրկիտ բուսասիրաց։

Ky. Քոչի, զորմէ տես 'ի կարգի բանիցս (15-6)։

L. Լիննէոս գերահռչակ բուսաբան գերմանացի։

Boiss-ier Edouard, Հելուետիացի, որ արդ աւարտէ զտպագրութիւն բազմահատոր Արևելեան Ծաղկաբանութեան, Flora Orientalis.

Aucher Eloy, փռանկ. ճանապարհագիր և բուսաքնին 'ի Փոքր Ասիա, 'ի Հայս, 'ի Յունաստան, և այլն. յամս 1832-7։

Jaubert, փռանկ. քննեաց զարևմտեան Փոքր Ասիա, և ընդ Շբախայ (Spach), հրատարակեաց 'ի 500 տախտակս՝ զանուանեալն Illustrationes Plantarum.

Sibthorp և Hawkins շրջեցան 'ի Յունաստան և 'ի կղզիս, 'ի վերջ կոյս ԺԸ դարու (1786-95)։

Sieber, քննեաց զբուսաբերութիւն Կրետեայ. 1817։

Webb ընդ Բարոլինի (Parolini) իտալացւոյ քննեաց զբուսաբերութիւն Յունաստանի և արևմտեան եզերաց Փոքր Ասիոյ։

Don, ստորագրեաց զբոյսս հաւաքեալս 'ի Ֆելլու, (Fellow) անգղիացւոյ 'ի Լիւկիա, յամի 1841։

C. Koch, Քոխ, Գերմանացի բժիշկ և բուսաբան, որոյ քննեալ է զմեծ մասն Հայոց աշխարհի, զԿովկասու, Պոնտոսի, և այլն, յամս 1836-44։

Olivier և Bruguière, քննեցին յերկրին Ասորւոց. 1785։

Bunge, Ռուս, քննեաց 'ի Պարսս և յԱֆղանստան 1858։

Fzl, Fenzel, Ֆէնցլ, քննեաց յԱֆղանստան։

M. B. Մարշալ Պիպէրշդայն (Marschal Biberstein),

[1] Այսու գերմանական անուամբ վարին գիտնականք և սիրականք, թէ և լսի առ փռանկս և թարգմանաբար Pensez à moi, Ne m' oubliez pas, Aimez-moi, և այլն. քանզի առ Գերմանացիս աւանդի, սիրականաց զուգից ճեմելով յափունս Հռենոսի, քաղել պատանւոյն 'ի ծաղկանց աստի 'ի տեսակէ ջրափնեայցն (Myosotis palustris) և ընծայել սիրուհւոյն. այլ 'ի զքաղելն՝ լպրծեալ ոտիցն՝ գետամոյն լինել. և ոչ կարելով ճողոպրել 'ի յորձանացն՝ մերձ յընկղմելն՝ ձգել յետին ուժով զծաղկունսն որ 'ի բուռն՝ առ սիրելին իւր, ասելով. Մի՛ զիս մոռանար. Vergiss-mein-nicht։ Եւ օրիորդին, ասեն, յայնմհետէ ստէպ յածելով զեզերբք սիրագաւ գետոյն՝ ճչել անդադար, Մի՛ զիս մոռանար, մի՛ զիս մոռանար. որ համառօտի 'ի մեզ՝ Յո՜ղ յո՜ղ։ Ո՞չ արդեօք այսգունակ ինչ դէպք եղերականք հնարեցին առ հինս Հայկազանց մերոց՝ զանուն Ող ող ծաղկան վայրի, որ և գետափանց է դրացի, կամ զեւս հրաշագեղն Աղբերոյ որեան։

[2] . . . Ein neues kleines Edelweiss, mit der lieben Nachbarin, einem Vergissmeinnicht, das lieblichste Alpenpflänzchen, das ich je gesehen habe. — *Kotschy*, 89։ Որ 'ի հոյլս հարիւրաւոր լեռնաբուսոց գեբագոյն երևեցաւ քաջի բուսագիտին, չեն ինչ զարմանք եթէ բուսասիրաց և գեղասիրաց շրջագայից՝ այնպէս անձկալի և սիրալի գտցի ծաղիկն այն. որոց ինքնին ականատես գտայ երբեմն 'ի լեռնադաշտս Դիրոլի. ուր և ստրկանս ասեն կարգեալ արդ պետութեանն, զի մի անյագաբարն քաղելով բնաջինջ լիցի Ալպիտակափառն այն։

Ռուս. հանդերձ այլովք հրատարակեաց 'ի սկիզբն դարուս (1808-19) 'ի Խարքով քաղաքի՝ գպատուական Ծաղկաբանութիւնն Flora Taurico-Caucasica.

Held-reich, Հելտրայխ Գերմանացի, քննեաց զբուսաբերութիւն Քարուտ Կիլիկիոյ և Պամփիւլիոյ, յամի 1845։

## Ա. Ցանկ Բոյսոց, ըստ վայրուց.

1 Alyssum argyrophyllum (Schott et Ky.) ֆ. (փռանկերէն) Alysson. Վառվռուկ կամ Խչաքեղ արծաթսաղարթ. կոչի 'ի մերոցս և Կատղած շան խոտ. – ԺԱ 2. Ը 2

2 Eunomia rubescens (Schott et Ky.) Եւնոմիա կարմրուկ. – ԺԱ 2

3 Ajuga Chia (L.) ֆ. Bugle. * Ծնուկ. այսպէս առուգաբանեալ 'ի լատին բառէ, զի կարծիւր ունել զօրութիւն հեշտածին առնելոյ. – ԺԱ 2

4 Astragalus pelliger (Fenzel) ֆ. Astragale. Խազիրան մորթեւոր. – ԺԱ 2. Ժ 2. Թ 1

5 Heldreichia Kotschyi (Boiss.) Հելտրայքիա քոչեան, յանուն Հելտրայխի. – ԺԱ 2. Ժ 2. Ժ 3. Թ 2

6 Veronica Kotschyana (Benth.) ֆ. Véronique. Վերոնիկ քոչեան. յանուն Ս. Վերոնիկայ կուսի. – ԺԱ 2. Ժ 3

7 Hypericum crenulatum (Boiss.) ֆ. Millepertuis. Մկան-ադիք. այսպէս զրեն Բժշկարանք մեր՝ հանդերձ յունականաւն Հիպիփարիկոն. բայց ոմն Բանչար կոչէ, այլ ոմն Ծասի կոճ։. – ԺԱ 2. Թ 2. Թ 3

8 Draba acaulis (Boiss.) ֆ. Drave. Կոտիմն անցողուն. – ԺԱ 2. Ժ 2. Ժ 3

9 Euphorbia densa (Schott et Ky.) ֆ. Euphorbe. Աբարբիոն խիտ. – ԺԱ 2

10 Lactuca glareosa (Schott et Ky.) ֆ. Laitue. Հազար կոպճուտ. – ԺԱ 2

11 Lamium eriocephalum (Benth.) ֆ. Lamier. Եղինճմայր ասրագլուխ. – ԺԱ 2

12 Cerastium triginum (Vill.) ֆ. Céraiste. Կորնգան եռատերև. – ԺԱ 2. Ժ 2. Ժ 3. Թ 2. Թ 3

13 Eunomia oppositifolia (Dl.) Եւնոմիա հակատերև. – ԺԱ 2. Թ 1. Թ 3

14 Potentilla pulvinaris (Fzl.) ֆ. Potentille. *Հզօրի բարձաձև. ըստ լատին անուանն, որ առ 'ի յայտնել զմեծ կամ զբազմապատիկ զօրութիւնն 'ի դեղորայս. – ԺԱ 2. Թ 3. Ը 2. Ը 3

15 Viola crassifolia (Fzl.) ֆ. Violette. Մանուշակ թաւաթերթ. – Ժ 2. Ժ 3. Թ 2

16 Astragalus eriophyllus (Boiss.) Խազիրան ասրատերև. – Ժ 2. Ժ 3

17 Saponaria pulvinaris (Boiss.) ֆ. Saponaire. Օշնան բարձաձև. – Ժ 2. Ժ 3. Թ 2

18 Cerastium gnaphalodes (Fzl.) Կորնգան ասրատեսակ. – Թ 2. Թ 3

19 Silene odontopetala (Fzl.) ֆ. Silénée. Ճլեւեկ ատամնափերթ. – Ժ 2. Թ 2. Ժ 3

20 Erysimum Kotchyi (J. Gay.) ֆ. Vélar. Երնջնատակ քոչեան. – Ժ 1. Ժ 2

21 Erysimum rupicola (Schott et Ky.) Երնջնատակ ապառաժի. – Ժ 2. Ժ 3

22 Astragalus melanocephalus (Boiss.) Խազիրան սեւագլուխ. – Ժ 2. Թ 2. Թ 3. Ը 2

23 Scorzonera rigida (Boiss.) ֆ. Scorzonère. *Սեւկեղևի բիրտ. – Թ 2. Թ 3

24 Hedysarum erythroleucum (Scott et Ky.) ֆ. Sainfoin cultivé. Քաղցր կորնգան, կարմրասպիտակ. – Ժ 2. Ժ 3

25 Astragalus amœnus (Fzl.) Խազիրան զուարթատես. – Թ 2. Թ 3

26 Astragalus chionophilus (Boiss.) Խազիրան ասրատերև ?. – Թ 1. Թ 2. Ը 3

27 Silene supina (M. B.) Ճլեւեկ գետնամած. – Ժ 2. Թ 2. Թ 3

28 Saxifraga Kotschyi (Boiss.) ֆ. Saxifrage. *Քարկոտրուկ Քոչեան. Ժ 3. Ժ 2. Ը 1. Է 3

29 Silene olympica (Boiss.) Ճլեւեկ ոլիմպեան. – Թ 2

30 Dianthus brevicaulis (Fzl.) ֆ. Oeillet. Շահոգրամ կարճաբուն. Թ 1. Թ 3. Ը 1. Ը 3. Է 2. Է 3

31 Silene dianthifolia (J. Gray.) Ճլեւեկ շահոգրամատերև. – Ը 2. Ը 3

32 Arabis albida (Ster.) * Արաբիկ սպիտակուկ. – Թ 2. Թ 3

33 Johrenia alpina (Fzl.) ֆ. Arabette. * Մանիշկուկ լեռնային. 'ի յունական մանուշակ բառէ յօդեալ. – Թ 2. Թ 3

34 Androsace Armena (Duby.) ֆ. Androsace. *Առնասպար հայկական. այսպէս թարգմանի՝ ըստ ձևոյն, յերկուց յոյն բառից, մարդ և ասպար. զուգեցաք ըստ առնադէն հին բառի. – Թ 2

35 Heracleum Pastinaca (Fzl.) ֆ. Berce. Գազար հերակլեան. քանզի Հերակլի նուիրեալ էր 'ի հեթանոսաց. – Ժ 3. Թ 3. Ը 2

36 Androsace olympica (Boiss.) *Առնասպար ոլիմպիական. – Ը 1. Ը 2

36 Pedicularis caucasica (M. B.) ֆ. Pédiculaire. *Ոջլադեղ կովկասեան. – Ը 2

37 Omphalodes Luciliae (Boiss.) ֆ. Cynoglosse printanière. *Պորտնուկ. Թ 2. Ը 2. Ը 3

38 Scrophularia libanotica (Boiss.) ֆ. Scrofulaire. *Խոզեկընդի լիբանանեան. քանզի բուժիչ համարիւր այն ազգ ելընդից (Scrofule), որ և խոզից հանդիպի. յոմանց կոչեցեալ է Բիւրախոտեան կամ Բիւրախթան ? – Ժ 2. Ը 2

39 Scorzonera cinerea (Boiss.) *Սեւկեղեւի մոխրագոյն. – Թ 2. Թ 3

40 Inula acaulis (Scott et Ky.) ֆ. Inule. Լուադեղ անցօղուն. – Թ 3. Ը 2. Ը 3

41 Erigeron Cilicicum (Boiss.) ֆ. Vergerette. Պառաւու ծար կիլիկեան. անունն 'ի յոյն բառից թարգմանի Ծերոյ ալիք. 'ի հայումս լսի Պառաւու ծար, թէ և զՁարխոտն նշանակէ. – Թ 1. Թ 2. Ը 3

42 Acantholimon androsaceum (Boiss.) Կոծոծ առնասպարեայ. – փուշ՝ որ ըստ յունական անուանն 'ի խոնաւ տեղիս բուսանի։ Վանական վարդապետ մեր Կոծոծ կոչէ զբոյս մի փշաբեր, և ասէ. «'ի ջրավայրի է լինել». – Թ 1։ – Տես զպատկեր 7։

43 Asphodeline taurica (Kunth.) ֆ. Asphodèle. Շրէշ տաւրացի. – Ժ 2. Թ 2

44 Allium frigidum (Boiss.) ֆ. Ail. Խստոր սառնա-յին. – Թ 1. Թ 2. Թ 3

45 Hermodactylus cruciflorus (Schott et Ky.) Ձիւն-ծաղկի-տակ խաչածաղիկ. Թ 2

46 Onobrychis tragacantha (D. C.) ֆ. Sainfoin cultivé. Իշառույտ գազեայ. – Թ 2. Թ 3

47 Intibellia glaricosa (Scott et Ky.) Ինտիբելլիա կոպ-ճուտ. – Ժ 3

48 Crepis pinnatifida (Froel.) ֆ. Crépide. *Մուճակ փետրաձև. զայս նշանակէ յոյն անունն. – Ը 2. Ը 3

49 Podospermum canum (C. A. Mey.) *Կանթարերիկ սպիտակ. զի պտուղն կամ սերմն զկանթէ կա-խեալ է. – Ը 2. Ը 3

50 Leontodon axylepis (Boiss.) ֆ. Gnaphale pied-de-lion. * Առիւծճիրան կամ Առիւծժանի ան-փայտ. – Ը 2. Ը 3. Է 2. Է 3



6. Jurinea depressa. Յուրինեակ ցածուն (Թիւ 51.)

51 Jurinea depressa (C. A. Mey.) ֆ. Sarrette. *Յու-րինեակ ցածուն. յանուն Jurine բժշկի. – ԺԱ 2 Թ 2. Ը 3: – Տես պատկերն 6:

52 Cirsium rhizocephalum (C. A. Mey.) ֆ. Quenouille des près. *Փշականգառ արմատագլուխ. այսինքն ծաղիկ անցօղուն՝ անդստին յարմատոյն վերընձիւղեալ. – Ը 2. Ը 3

53 Carduus lanuginosus (W.) ֆ. Chardon. Ոքող բրդոտ. – Է 2

53 Cirsium lappaceum (M. B.) *Փշականգառ կեռեւոր. – Ը 3. Է 2

54 Centaura chrysolopha (Boiss.) ֆ. Centaurée. Տե-րեփուկ ոսկէցցուն. – Ը 3. Ը 2

55 Gnaphalium leucopilinum (Schott et Ky.) ֆ. Gna-

phale. Ականջուկ կամ ճաղճղուկ ճերմակախոյր. Թ 2. Ը 3

56 Pterocephalus Pinardi (Boiss.) փ. Scabieuse plumeuse. *Վարսկատար պինարտեան. – Ը 3. Է 3

57 Scabiosa Webbiana (Lindl.) փ. Scabieuse. Քոսքուկ վեպպեան. – Ը 3. Է 3

58 Acantholimon venustum (Boiss.) Կոծոծ գեղանի. – Ը 2. Ը 3

59 Polygonum Bistortoides (Boiss.) փ. Renouée. Մատիտեղն, կամ Հովուաբիր կրկնակոր. – Ը 2. Ը 3

60 Crocus Kotschyanus (C. Koch.) փ. Crocus կամ Safran. Քրքում քոչեան. – Ը 2. Է2. Է 3

60 Crocus Cilicicus (Kotschy). Քրքում կիլիկեան. – Ը 2. Է 3. Է 2

61 Gagea tauricola (Schott et Ky.) փ. Gagée. Կակէա տաւրացի. յանուն Gage անգղիացւոյ. առ մեզ Կակիա կոչի ըստ հին Բժշկարանաց՝ եղջիւրենոյ խէժն. – Ը 2



7. Acantholimon venustum. Կոծոծ գեղանի (Թիւ 42.)

62 Bromus sclerophyllus (Boiss.) փ. Brome. ? Խըրտցակ խստատերև. – Ը 3. Է 2

63 Poa psichrophila (Boiss.) փ. Paturin. Սէզ մանրատերև. – Թ 2. Ը 9

64 Fritillaria aurea (Schott). փ. Fritillaire. Թագաւորապսակ ոսկէգոյն. – Թ 2. Ը 2

65 Alopecurus angustifolius (Sm.) փ. Vulpin. *Աղուխաձետ նեղատերևի. – Թ 2. Թ 3

66 Sesleria tauricola (Kotschy). Սեսլերիա տաւրոսական. Թ 2. Ը 2

67 Eranthis Cilicica (Schott et Ky.) փ. Eranthis. *Գարնանծաղիկ կիլիկեան. զայս նշանակէ յոյն անունն. – Ը 2. Ը 3

68 Ornithogalum Kotschyanum (Fzl.) փ. Ornithogale. Ծնախատոր քոչեան. որ և Պրասատոխ կոչի ըստ Հայումս. – Ը 2

69 Vicia hypoleuca (Boiss.) փ. Vesce. Վիկն ստորասպիտակ. – Թ 3

70 Ervum Aucheri (Jaub. et Sp.) փ. Vesce. Ոլոռն վայրի կամ Վիկն ըստ ոմանց՝ Աղուէսու սուսեր. – Թ 3

71 Astragalus dioriticus (Schott et Ky.) Խազիրան յայտնաւոր. – Թ 3. Ը 2. Ը 3

72 Linum empetrifolium (Schott et Ky.) փ. Lin. Կըտաւատ քարքուսկի տերևով. – Ը 3

73 Polygala pruinosa (Boiss.) Կաթնխոտ սալորուտ?, կայծուտ?. յոյն բառն նշանակէ բազմակաթն, իբրու աճեցուցիչ կաթին ճարակաւորաց։ Ծանօթ է 'ի Հայս Կաթնխոտ, որ թերևս նոյն սա իցէ կամ Խչկաթնուկն. – Ը 3

74 Hypericum repens (L.) Մկանադի վաղվաղուկ. – Ը 3

75 Silene stentoria (Fzl.) փ. Silénée. Ճլեակ ստենտորեան. Թուի յանուն Ստենտորի քաջաձայն դիւցազին Յունաց. – Ը 2

76 Alsine juniperina (Fzl.) փ. Alsine. Բզրուկ գիհիաձև. – Ը 2. Ը 3

77 Arenaria Kotschyana (Fzl.) փ. Sabline. * Աւազուկ. զի յաւազուտս բուսանի. – Է 2. Ջ 3. Ե 4

78 Gypsophila curvifolia (Fzl.) փ. Gypsophile. *Գաճի կորատերև. զի 'ի գաճային գետինս բուսանի. – Ը 3. Է 2

79 Leptophragma eunomioides (Schott et Ky.) *Նըրբափեղկ եւնոմեան. – Ը 2

80 Ptilotrichum cyclocarpum (Boiss.) *Նրբամազ բոլորապտուղ. – Ը 2

80 Erysimum thirsoideum (Boiss.) փ. Vélar. Երնճատակ գեղարդնաձև. – Ը 2. Ը 3. Է 2

81 Isatis Candoleana (Boiss.) փ. Pastel. Guède. *Կոկուկ. զի կոկելոյ կամ ողորկելոյ զօրութիւն ընծայի նմա. նուիրեալ de Candole բուսաբանի. և տայ ներկ կապոյտ. – Թ 3. Ը 2. Ը 3

81 Isatis suffrutescens (Boiss.) Կոկուկ դերափայտային. գտանի առ վերնոյն։

82 Umbilicus Aizoon (Fzl.) փ. Ombilic. *Պորտի. զի լատին անունն պորտ նշանակէ, ըստ ձևոյ ինչ տերևոցն. – Թ 1. Թ 2. Է 3

83 Ranunculus demissus (D. C.) փ. Renoncule. Խաւածաղիկ նկուն. – Թ 2. Է 3

84 Papaver polychœtum (Schott et Ky.) փ. Pavot. Մեկոն բազմագիսակ. – Ը 1

85 Cryptoceras pulchellum (Schott et Ky.) * Ծածկածիլ գեղադէշ. – Ը 2. Է 2

86 Arabis androsacea (Fzl.) * Արաբիկ առնասպարեայ. – Թ 3. Է 3

87 Bunum Cilicicum (Fzl.) Գետնի պտուղ կամ Երկըրմայր կիլիկեան. — ըստ յոյն ձայնին Թարգմանի Բլրցի. ունի կոճղէզ փոքր ուտելի. որով նման համարեցաք հայկական անուանցս։ Բժշկարան մեր ասէ. « Խոտ է, երկու ազգ. մէկին ծաղիկն կարմիր, մէկին՝ ծիրանի դէտ կապուտ ». – Ը 2. Է 2. Է 3

88 Pinguicula vulgaris (L.) *Պարարտուկ. որպէս և ըստ Փռանկաց Grassette. – Ը 3

89 Pedicularis jucunda (Schott et Ky.) փ. Pédiculaire. *Ոջլադեղ խնդարար. – Թ 3. Ը 2

90 Veronica orientalis (Ait.) Վերոնիկ արևելեան. – Թ 3

90 Veronica dichrus (Schott et Ky.) Վերոնիկ երկգոյն. – Թ 3

91 Paracargum myosotioides (Boiss.) * Շուրջկողիկ մկնականջեայ. – Թ 2. Թ 3. Ը 2. Ը 3

92 Onosma versicolor (Schott et Ky.) փ. Orcanette. *Իշհոտոտ գունագոյն. այսպէս Թարգմանի ըստ յունականին. և զի ընծայէ ներկ կարմիր՝ ոմանց թուեցաւ Շէկխարի. – Թ 2

93 Thymus hirsutus (M. B.) փ. Thym. Ջամբուռ խոզանուտ. – Ը 2. Է 1. Է 3. Է 2

94 Salvia tauricola (Schott et Ky.) փ. Sauge. Եղեսպակ տաւրացի. – Ը 2

95 Mentha kotschyana (Boiss.) փ. Menthe. Անանուխ քոչեան. – Թ 3

96 Gentiana ciliata (L.) փ. Gentiane. Հոռոմ-երնջան յօնեղ. ըստ մեզ կոչի և Օձադեղ կամ Օձի սխտոր. – Թ 3

97 Galium olympicum (Boiss.) փ. Gaillet. Ողիմպիական Կտրածի խոտ, ըստ Շիրակացւոց. ըստ յունին նշանակէ մակարդող, վասն որոյ կոչեցին ոմանք 'ի նորոցս Մակարդախոտ. – Է 2. Է 3

97 Galium orientale (Boiss.) Արևելեան Կտրածի խոտ. – Է 2. Է 3

98 Campanula involucrata (Aucher). փ. Campanule. Կանթեղնիճ պատատուկ. – Է 3. Է 2

99 Phyteuma virgatum (Boiss.) փ. Raiponce. Փիւթեւմա խազ խազ. ըստ յունին նշանակէ տունկ զօրեղ. յազգէ կանթեղնիճի. արմատն և տերևք՝ ուտելի. – Է 2. Է 3

100 Hieracium pannosum (Boiss.) Բզնածարիր թաւ, ըստ Ստեփան. Շէհրիման. յունականն՝ յորմէ և փռանկն Epervière նշանակէ Որիական, այսինքն ախորժելի որի հաւուց և այլոց որսականաց. – Է 2. Է 3. Ե 4

101 Astragalus chrysochlorus (Boiss.) Խազիրան ժանգառի. – Է 2. Է 3

102 Daphne collina (Smith.) փ. Daphné. Laurier. Դափնի բլրցի. – Է 3

103 Cicer pimpinellae folium (Jaub. et Sp.) փ. Chiche. Սիսեռն սիզաձև. – Է 3

104 Astragalus echiodes (L' Herit). Խազիրան փշուտ. – Է 3

105 Potentilla Fenzelii (Lehm.) փ. Potentille. * Հզօրի ֆենցելեան. – Է 2

106 Cotoneaster numularia (C. A. Meyer) փ. Cotonéaster. * Սերկևլիճ լումայատիպ կամ աստղանիշ, որպէս կոչեն Իտալացիք, Cotogna stellata. – Է 2. Է 3

107 Rhamnus cornifolia (Boiss.) փ. Nerprun. Ցակրի կամ Դժնիկ եղջերատերև. – Է 3

108 Hypericum venustum (Fzl.) փ. Millepertuis. Մըկան-ադիք շքեղ. – Է 2. Է 3

109 Silene pharmacafolia (Fzl.) Ճլեակ փառմակատերև։ Փառմակ ծառ է Թունաւոր. – Է 2

110 Dianthus anatolicus (Boiss.) փ. Oeillet. Շահոգրամ անատոլիկեայ (արևեեան). – Է 3

111 Draba heterocoma (Fzl.) փ. Drave. Կոտեմ այլավարս? – Է 2. Է 3

112 Carpoceras Cilicicum (Schott et Ky.) * Եղջերամիրգ կիլիկեան. – Է 2

113 Thlaspi violascens (Schott et Ky.) փ. Tabouret. *Տափկի մանուշագոյն. զի տափակ նշանակէ 'ի յոյնն. – Է 3

114 Iberis jucunda (Schott et Ky.) փ. Ibéride. Կոտմընտուկ զուարթարար. – Է 3

115 Sedum Sempervivum (L.) փ. Sédum. Գառնադըմակիկ փոքր կամ մշտադալար. – Է 2

116 Hesperis Kotschyi (Boiss.) փ. Julienne. *Երեկորնիկ քոչեան. – Է 2

117 Parlatoria brachycarpa (Boiss.) Բարլադորիա կարճապտուղ. – Է 3

118 Anchonium Tournefortii (D. C.) *Հեղձի դուռնըֆորեան. – Ը 3. Է 2

119 Parnassia palustris (L.) փ. Parnassie. *Պառնասիա ճախնային. – Թ 3. Է 3

120 Anemone blanda (Schott et Ky.) փ. Anémone. Հողմածաղիկ կամ Հարսնուկ քնքոյշ. – Է 2

121 Ranunculus cuneatus (Boiss.) Խառածաղիկ յամրեղ, այսինքն անագանահաս. – Է 2

122 Papaver Persicum (Lindl). Մեկոն կամ Խաշխաշ պարսիկ. – Է 3

123 Aubrietia deltoidea (D. C.) փ. Alysson. Աւբրեցիա. յազգէ վառվառուկ ծաղկանց. ընծայեալ Aubriet փռանկ նկարչի. – Է 3

124 Thommasinia Kotschyi (Boiss.) Թոմասենի. յանուն Թովմայի հելուետիացի բուսախնդրի. – Է 3

125 Primula auriculata (Lam). փ. Oreille d'ours կամ Primevère auricule. *Կովացնծուկ ականջուտ, ըստ Ստեփ. Շէհրիմ. – Է 3

126 Acanthus villosus (Boiss.) փ. Acanthe. Ականթ, կամ Կառն, թաւամազ. – Ը 3

127 Ferula pachyloba (Fzl.) փ. Férule. Բոզ թանձրաբլիթ. – Է 3. Ջ 2

128 Otites Aucheri (Boiss.) *Ականջուկ աւգերեան, ըստ յունականին. բայց հայկականն ականջուկ՝ այլ խոտ է. – Ջ 3

129 Mumbya conglobata (Boiss.) Մումբիա գնտակերպ. – Է 3

130 Alkanna brachyfolen (Boiss.) Խարի (արաբացի անուն) փոքրատերև. նման Շէկխարի կամ Շիխարի որ է Anchusa, ընծայէ ներկ կարմիր. – Է 3

131 Cerinthe maculata (W.) փ. Mélinet. *Մեղուածաղիկ բծաւոր. յոյնն նշանակէ մոմածաղիկ. ախորժելի է մեղուաց. – Է 2

132 Marrubium velutinum (Lam.) փ. Marrube. Մեղրածուծ կամ Խորտակ-ծոթրին թաւարծի. – Ջ 3

133 Lamium nepetœfolium (Boiss.) փ. Lamier. Եղինձմայր կատուախոտի տերևով. – Է 3. Ջ 3

134 Nepeta Cilicica (Boiss.) փ. Chataire. Կատուախոտ կիլիկեան, տեսակ ինչ դաղձին. – Թ 3. Ը 3

135 Scutellaria orientalis (Boiss.) փ. Toque. *Սկուտղի արևելեան. ըստ ձևոյն անուանեալ. – Է 3

136 Thymus rigidus (Schott et Ky.) փ. Thym. Ջամբուռ խիստ կամ սառնային. – Ը 3

137 Vincetonicum alpinum (Schott et Ky.) փ. Toque. *Թիւնաթափ լեռնային. – Է 3

138 Asperula stricta (Boiss.) փ. Aspérule. *Մարգամարօտ? ըստ Ստեփ. Շէհր. լատին անունն նշանակէ խիստ, և ըստ նուազականին՝ Խստուկ. ըստ զանազանութեան տեսակին՝ կոչի և սեղմ. – Է 3

139 Phyteuma Kotschyi (Boiss.) փ. Raiponce. Ֆիւթեւմա քոչեան. – Ը 3

140 Campanula Cymbalaria (Sibth.) *Կանթեղնիճ ծնծղաձև. – Է 3

141 Scorzonera Cilicica (Boiss.) *Սեւկեղեւի կիլիկեան. – Է 3

142 Centaurea cana (S. M.) Տերեփուկ սպիտակ. – Է 3

143 Carlina oligocephala (Boiss.) փ. Carline. Կարլինա փոքրագլուխ. յանուն Կարոլոսի ուրումն կայսեր, որոյ զօրք բժշկեալ ասին սովաւ. – Ջ 3

144 Amphibolis cœlestis (Schott et Ky.) *Երկդիմակ երկնագոյն. – Ը 3

145 Hypericum Kotschyi (Boiss.) Մկան-ագիք քոչեան. – Ը 3

146 Vicia Cilicica (Boiss.) Վիկ կիլիկեան. – Ը 3

147 Sesleria nitida (Boiss.) Ս[illegible]լերիա սպրկիկ. – Է 3

148 Stipa pennata (L.) փ. Stipe. *Թելունի փետրաւոր. – Ը 3

149 Tulipa pulchella (Fzl.) փ. Tulipe. Կակաչ գեղանի. – Է 2

150 Colchicum Byzanthinum (Gan). փ. Colchique. Ջիւնծաղիկ բիւզանդեան. – Է 2. Դ 3

151 Allium Cassium (Boiss.) Խստոր կասիական (Կասիոս լերին). – Է 2

152 Phyteuma tauricola (J. Gay.) Ֆիւթեւմա տաւրոսական. – Է 3

153 Rumex macranthus (Boiss.) փ. Rumex. *Փքնի մեծածաղիկ. զի փքին նշանակէ լատին անունն. – Է 3

154 Lygia multicaulis (Schott et Ky.) Լիգիա բազմացօղուն. – Է 2

155 Valeriana alliarœfolia (Vahl) փ. Valériane. Մըրուանտակ խստորատերև. կամ Աղբադրուկ. – Է 2. Ջ 2

156 Scabiosa calocephala (Boiss.) *Քոսքսուկ գլխապանծ. – Է 3

157 Anthemis Kotschyana (Boiss.) փ. Camomille. Երիցուկ կամ Խնձոր-խոտ, և այլ պէսպէս կոչմամբ 'ի հայումս. բայց Անբեմ անուամբ այլ ազգ բուսոյ ճանաչէ ոմն 'ի նախնեաց մերոց, գրելով. «Անթեմն բանջար է երևելի, և բազմապատիկ ունի շուրջ զինքեամբ զտերևոցն լուսանման բողբոջս». – Է 3

158 Artemisa pontica (L.) փ. Armoise. Նգածաղիկ պոնտացի. – Է 3

159 Senecio Cilicicus (Boiss.) փ. Séneçon. *Գառնամանուկ? կիլիկեան (Ստ. Շէհր.). – Է 3

160 Senecio megalophron (Fzl.) *Գառնամանուկ պերճ. – Է 3

161 Cedrus Libani (Barret.) փ. Cèdre. Մայր Լիբանանու. – Է 2. Է 3. Ջ 1. Ջ 2. Ջ 3. Ջ 4. Ե 3

162 Juniperus fœtidissima (W.) փ. Genévrier. Գիհի չարահոտ. – Ջ 2. Ջ 3. Ջ 4. Ե 4

163 Iuniperus excelsa (M. B.) Գիհի բարձրատեսակ. – Ջ 2. Ջ 3. Ջ 4

164 Abies Cilicica (Ant et Ky.) փ. Sapin. Եղևին կիլիկեան. – Գ 3. Դ 4. Դ 3. Ջ 2. Ջ 3. Ե 2. Ե 3

165 Astragalus Fenzelii (Boiss.) Խազիրան ֆենցելեան. – Ջ 3

166 Vincetoxicum Tmoleum (Boiss.) *Թունաթափ տմոլեան. – Ջ 3

167 Galium coronatum (Sibth.) փ. Gaillet. Կտրածի խոտ պսակաւոր. – Ջ 3
168 Gypsophila libanotica (Auch.) փ. Gypsophile. *Գաճխոտ լիբանանեան. – Է 3
169 Euphorbia Kotschyana (Fzl.) փ. Euphorbe. Աբարբիոն քոչեան. Է. 3
170 Pyrus salicifolia (M. B.) փ. Poirier. Տանձենի ուռենատերև. Ջ 3.
171 Helichrysum Anatolicum (Boiss.) փ. Gnapale, Stechas կամ Stæchas citrin. *Արեւուկի անատոլիկեայ. – Ջ 3
172 Scrophularia Kotschyana (Benth.) *Խոզելընդի քոչեան. – Ջ 3
173 Campanula psylostachya (Boiss.) Կանթեղնիճ մանրահասկ. – Ը 3. Ջ 3
174 Achillea grata (Fz●) փ. Achillée. Հազարտերևեան հաճելի. – Ջ 3
175 Dorycnium anatolicum (Boiss.) փ. Dorycnie. *Նիզակաշուսփ անատոլեան. խոտ՝ որով չփէին հինք զայր նիզակաց առ ՚ի թունաւորել. – Ջ 3
176 Leucocyclus formosus (Boiss.) *Ճրճապխտակ գեղանի. – Ջ 3
177 Campanula trachyphylla (Schott et Ky.) Կանթեղնիճ խստատերև. – Ջ 3
178 Potentilla Kotschyana (Fzl.) *Հզօրի քոչեան. – Ջ 2. Ջ 3. Ջ 4
179 Achillea spinulifolia (Fzl.) Հազարտերևեան փշատերև կամ մամխիատերև. – Ջ 2. Ջ 3. Ջ 4
180 Rosa pulchella (Schott et Ky.) Վարդ գեղանի. – Է 3
181 Rosa poterifolia (Schott et Ky.) Վարդ սխահաձև. – Է 3
182 Orchis Comperiana (Stev.) փ. Orchis. *Ջուածաղիկ կոմպերեան. – Ջ 2. Ջ 3
183 Centranthus elatus (Boiss) փ. Centranthe. *Խթուկ բարձր. յունականն նշանակէ խթան-ծաղիկ. – Ջ 2. Ջ 3
184 Origanum ciliatum (Boiss.) փ. Origan. Ջուխրակ թաւարծի. – Ջ 2
185 Sideritis ambigua (Fzl.) փ. Crapaudine. *Երկաթուկ երկդիմի. զի համարէր առ հինսն բուժիչ գոլ վիրաց յերկաթոյ. – Ջ 2. Ջ 3
186 Eryngium Kotschyi (Boiss.) փ. Panicaut. Երինճնակ կամ Երնջատակ քոչեան. – Ջ 3. Ջ 4
187 Pyrethrum Cedrorum (Schott et Ky.) փ. Chrysanthème. Իգարողի տակ կամ Թաղանդաստ. Ակրկարհա կամ Մախարկարահա ըստ Արաբաց: Հին Բժշկարան մի մեկնէ, «Հին Տարղոնին տակըն». այլ բժշկարան՝ «Մուսուլցի Տարխուն» կոչէ. – Է 3. Ջ 3
188 Primula acaulis (Jacy.) փ. Primevère. *Կովացընծուկ անցօղուն. – Ջ 3
189 Ebenus Cilicica (Schott et Ky.) փ. Ebèn. Plaqueminier. Երեևոս կիլիկեան. Ջ 3
190 Astragalus pallidus (Boiss.) Խազիրան դեղնորակ կամ տմոյն. – Ջ 2
191 Cyclamen Cilicicum (Boiss.) փ. Cyclame. Թաղթ կիլիկեան. Է 2. Ջ 3. Ե 3
192 Androsace maxima (L.) *Առնասպար մեծագոյն. – Ե 4
193 Stochlina apiculata (Labill.) Ստոկլինա ծայրացեալ. – Ե 4
194 Potentilla speciosa (W.) *Հզօրի վայելչագեղ. – Ե 4
195 Gypsophila sphœrocephala (Fzl.) *Գաճի գնտագլուխ. – Ե 2
196 Convolvolus Scamonia (L.) փ. Liseron. Պատատուկ սակամոնեան. – Ջ 2
197 Heliotropium rotundifolium (Sieb.) փ. Héliotrope. *Արևաշուրջ բոլորագլուխ. – Ե 4
198 Stachys rupestris (Benth.) փ. Epiaire. Եղնախոտ կամ Եղնախոտն ապառաժի. – Ե 3
199 Micromeria marifolia (Benth). փ. Sarriètte. *Մանրմանի ճախնատերև ? – Ե 3
200 Salvia grandiflora (Etling.) Եղեսպակ մեծածաղիկ. – Ե 3
201 Stachys Kurdica (Boiss.) Եղնախոտն կորդուացի. – Ե 2
202 Quercus Ibicis (Ky.) փ. Chêne. Կաղնի իբիկեան. – Ե 2
203 Colchicum candidum (Schott et Ky.) փ. Colchique. Ձիւնծաղիկ պայծառ. – Ե 4
204 Quercus Ibicis (Ky. var.) Կաղնի իբիկեան, այլազան. – Ե 2
205 Quercus Abietum (Ky.) Կաղնի եղեւնեայ. – Ջ 2. Ե 2
206 Quercus Cedrorum (Ky.) Կաղնի մայրեաց. – Ջ 2. Ե 2
207 Quercus Libani (Oliv.) Կաղնի Լիբանանու. – Ե 2. Ե 3. Ե 4. Գ 2. Գ 3
208 Umbilicus erectus (L.) փ. Ombillic. *Պորտի ուղղաբերձ. Ե 4
209 Dianthus actinopetalus (Fzl.) Ճահօզրամ ճառագայթաձև. – Ե 4
210 Gundelia Tournefortii (L.) Գունդելիա դուռնըֆորեան. – Ե 3. Ե 4
211 Senecio farfarœfolium (Boiss.) փ. Séneçon. *Գառնամանուկ փառփառատերև[1]. – Ե 3. Ե 4
212 Acantholimon Pinardi (Boiss.) Կոծոծ պինարտեան. – Ե 4
213 Astragalus Schottii (Boiss.) Խազիրան շոթեան. – Ե 3
214 Astragalus panosus (Fzl.) Խազիրան թաւ. – Ե 3
215 Origanum micranthum (Vogel.) Ջուխրակ մանրածաղիկ. – Ե 4
216 Traehelium serotinum (Boiss.) փ. Trachélie. *Երկայնվզիկ անագանի. – Ե 3
217 Scilla autumnalis (L.) փ. Scille. Մկնսոխ աշնայնի. – Ե 3
218 Sorbus Græca (Lod.) փ. Sorbier. Սին հոռոմ. – Ե 2. Ե 3
219 Celsia Lepturus (Schott.) փ. Celsie. Կելսիա նըրբահասկ. յանուն Կելսիոսի արևելագիտի. – Ե 2. Ե 3
220 Acer creticum (L.) փ. Erable. Տխկի կրետացի. ըստ ձայնին և ըստ նմանութեան մարթի համարել և Ցակրի. – Է 1. Ե 2

1 Փառփառ՝ խմա ըստ Լատինաց Farfara, որ է տեսակ ՚Հազգեղ (Tussilago) խոտոյ. ըստ Հայումս նշանակէ զՓըփըրեմ կամ զՄնձառուկ

221 Solidago Virgaurea (L.) փ. Solidage. *Ամբենի ոսկէատեղն. – Ե 2

222 Pinus Laricio (Poir.) փ. Pin-Laricio. Բխանի. – Ե 2 Ե 3. Դ 4

223 Ruscus angustifolius (Boiss.) փ. Fragon. Կազմուրենի նեղատերեւի. – Դ 4

224 Bupleurum Kœchelii (Fzl.) փ. Buplèvre. *Եզնակողիկ քէօխէլեան. – Դ 4

224 Allium Cilicicum (Boiss.) Խստոր կիլիկեան. – Դ 4

225 Chrysoptalmum sternutatorium (C. H. Schz.) *Ոսկիակն փռնգիչ. – Դ 4

226 Seseli gummiferum (L.) փ. Séséli. Անձխտան խիժաբեր. խէժն ըստ մեր Բժշկարանաց կոչի Օշախ, Հլթիս և Խասնի. – Դ 4

227 Convallaria Cilicica (Schott et Ky.) փ. Muguet. Շուշան հովտաց կիլիկեան. – Դ 4

228 Populus Cilicica (Ky.) փ. Peuplier. Կաղամախի կիլիկեան. – Զ 2. Է 3

229 Origanum hirtum (L. K.) Զուխրակ թաւարծի կամ Իշածոթրին. – Ե 3

230 Pistacea Palæstina (Boiss.) փ. Pistachier. Պիստակ պաղեստինացի. – Ե 3

231 Calamintha florida (Boiss.) փ. Calament. Անտուր ծաղկաւէտ. – Ե 2. Ե 3

232 Phlomis armeniaca (W.) փ. Phlomide. Փլոմիս հայկական. այսպէս առեալ նախնեաց մերոց 'ի յունականէն, որ թարգմանի բոց, զի զաղուամազ նորին վարէին 'ի լուցկի. – Զ 2. Զ 4

233 Pinus Bruttia (Ten.) Շոճի բրուտտեան. – Դ 2. Դ 3. Գ 2. Գ 3. Գ 4

234 Styrax officinalis (L.) փ. Alibousier. Ստիւրակ կամ Շեքլար դեղագործաց. – Դ 2. Դ 3. Գ 3

235 Quercus rigida (Willd.) Կաղնի կարկամ. – Ե 3. Դ 2. Դ 3. Դ 4

235 Quercus syriaca (Ky.) Կաղնի Ասորեաց. – Ե 3. Դ 2. Դ 3. Դ 4

235 Quercus tauricola (Ky.) Կաղնի տաւրոսական. – Ե 3. Դ 2. Դ 3. Դ 4

235 Arceuthos drupacea (Ant et Ky.) *Գիհիափող. զի խիղբ արկանէ զգիհի ծառով. – Ե 3. Դ 2. Դ 3. Դ 4

236 Rhamnus petiolaris (Boiss.) փ. Nerprun. Ցակրի կամ Դժնիկ կոթաւոր. – Ե 3

237 Rhamnus oleoides (L.) Ցակրի իւղայնի. – Դ 4

238 Globularia trichosantha (C. A. Mey.) փ. Globulaire. Գնդածաղիկ գիսաւոր. ըստ մեր նախնեաց գնտածաղիկն է տեսակ Բարձուենեկի. – Դ 4

238 Umbilicus Pestalozza (Boiss.) *Պորտի բեստալոցցեան. – Դ 4

239 Salvia Benthamiana (Boiss.) Եղեսպակ պենթամեան. – Դ 4

240 Salvia Aucheri (Benth.) Եղեսպակ Աւգերեան. – Դ 3. Դ 4

241 Heracleum platytanium (Boiss.) փ. Berce. *Հերակլիոն լայնաչերտ. – Դ 2. Դ 3. Դ 4

242 Pelargonium Endiclerianum (Fzl.) *Արագլակըտուց էնտլիկերանեան. – Ե 3. Դ 3. Դ 4

243 Saponaria Kotschyi (Boiss.) փ. Saponaire. Օշնան քոչեան. – Դ. 2. Դ 3

244 Ostrya carpinifolia (Scop.) *Թեփկի կախմխատերեւ. – Դ 3. Դ 4

244 Phytolaca pruinosa (Fzl.) փ. Phytolaque. *Լաքունի եղեմնուտ (կամ սալորուտ?). – Ե 3. Դ 4

245 Tanacetum argenteum (W.) փ. Tanaisie. *Մեղուամուշկ (ըստ Շէհրիման.) արծաթագոյն. – Զ 3. Ե 4. Ը 2

246 Vincetoxicum stellyflorium (Boiss.) փ. Toque. *Թունաթափ աստղատերեւ. – Դ 4

247 Michauxia campanuloides (L' Erit.) *Միշոյեան զանգականձեւ. ընծայեալ Միշոյ պատմագրի. – Դ 3

247 Michauxia columnaris (Boiss.) Միշոյեան սիւնաձեւ. – Դ 3

248 Colutea persica (Boiss.) փ. Baguenaudier. *Կորկի պարսկային. յոյն անունն նշանակէ ծառ կորեալ, զի համարեալ էր թէ ընդ կորելն և ցամաքէր ծառս այս. – Ե 4

249 Achillea micrantha (M. B.) փ. Achillée. Հազարտերեւեան մանրածաղիկ. – Դ 4

250 Cornus mascula (L.) փ. Cernouiller mâle. Զողալենի որձ, ըստ կարծեաց հին բուսաբանից. – Դ 3

251 Vincetoxicum canescens (Decais.) *Թունաթափ սպիտակակիզն. – Դ 3

252 Githago brachyloba (Fzl.) փ. Nielle de champ. Վայրի Սոնիճ կամ Արջնդեղ, կարճպատեան. – Դ 3

253 Cleome ornithopodoides (M. B.) փ. Cléomé. Կլէոմէ թռչնաճիւ. յոյն անունն նշանակէ փակել, ըստ ձեւոյ բաժակի ծաղկին. – Դ 3

254 Farsetia clypeata (D. C.) Ֆարսետիա վահանաւոր. – Դ 3

255 Odontharrena paniculata (Fzl.) *Ատամնառէշ հասկաձեւ. – Դ 3

256 Ajuga glabra (Presl.) փ. Bugle. *Ծնուկ լերկ. – Դ 4

257 Ajuga tridactylides (L.) *Ծնուկ եռամատնի. – Դ 4

258 Scutellaria salviæfolia (Benth.) *Սկուտղի եղեսպակատերեւ. – Դ 3

259 Campanula Kotschyi (D. C.) Կանթեղնիճ քոչեան. – Ե 3. Դ 3

260 Sideritis perfoliata (L.) փ. Crapaudine. *Երկաթբուժակ հակատերեւ. – Դ 3

261 Achillea cilicica (J. Gay.) Հազարտերեւեան կիլիկեցի. – Դ 4

262 Crategus orientalis (L.) փ. Alisier. *Ուժատու արեւելեան. զյոյն անունն ստուգաբանեն ոմանք՝ ոյժ ունիմ, այլք՝ ոյժ տուող այծից. ըստ ոմանց կոչի և Satirion. զայս անուն Ստեփ. Շէհրիմ. Հպերկի-տակ կոչէ. բայց Crategus թուփ է և ծառ խակ. – Դ 4

263 Quercus Vallonea (Ky.) Կաղնի վալլոնեան. – Դ 2. Գ 3

264 Phlomis Samia (L.) փ. Phlomide. Փլոմիս սամիացի. – Բ 4. Դ 3. Գ 4. Բ 2. Բ 3

265 Anthistiria brachyacantha (Boiss.) *Փնջուկ կարճածաղիկ. յոյնն նշանակէ ծաղկափունջ. – Գ 3

266 Podocytisus Caramanicus (Boiss.) փ. Cytise. Հաւամրգի ղարամանեան. – Գ 3

267 Fontanesia phylliroides (Labill.) փ. Fontanésie. Ֆոնտանեսիա տերեւուտ? ընծայեալ Ֆոնդան, Fontanes, բանասիրի. – Գ 3

268 Gonocytisus angulatus (Spach.) փ. Cytise. Հաւամրգի ծնգոտ անկիւնաւոր. – Գ 3. Գ 4

269 Erianthis Ravenna (P. B.) *Գարնանծաղիկ Հռա-ւեննեան. — Գ 3. Գ 4
270 Erica verticillata (L.) փ. Bruyère. Խալանջ ող-նաւոր. — Գ 3
271 Arbutus Andrachne (L.) փ. Arbousier. Մաթու-զենի անդրակնեան. — Գ 4. Բ 2. Բ 3. Բ 4
272 Platanus orientalis (L.) փ. Platane. Սօսի արև-ելեան. — Գ 4. Բ 3. Բ 4
273 Fraxynus oxyphylla (M. B.) փ. Frêne. Հացի սրա-տերև. — Գ 4
274 Paliurus australis (L.) փ. Paliure. *Ցանկապա-տուկ Հարաւային. յոյնն նշանակէ 'ի վայր կոյս չրջել զփուշս' 'ի պէտս պատնիշի. — Գ 3. Գ 4
275 Quercus Cerris (L. var.) Կաղնի բալուտ. — Գ 3
276 Astragalus Prusianus (Boiss.) Խագիրան պրու-սեան. — Ե 3. Գ 3
277 Taxus baccata (L.) փ. If. Գեղձի Հատևոր. — Բ 2. Բ 3. Բ 4
277 Astropa Belladonna (L.) Շնախաղող. — Բ 2. Բ 3. Բ 4
277 Laurus nobilis (L.) Laurier. Սարդենի Հասարակ կամ ապոլոնեան. — Բ 2. Բ 3. Բ 4
277 Vitis vinifera (L.) փ. Vigne. Որթ գինեբեր. — Բ 2. Բ 3. Բ 4
278 Pinus Carica (Don.) Թեղօշ. — Բ 2. Բ 3
279 Myrtus communis (L.) փ. Myrte. Մրտենի Հասա-րակ. — Բ 2. Բ 3. Բ 4
280 Nerium Oleander (L.) փ. Oléandre. *Դափնեվարդ կամ Ոլէանդր. — Բ 4. Ա 2. Ա 3. Ա 4
281 Scilla Pseudomaritima (Ky.) փ. Scille. Մկնսոխ գեր-ծովային. — Բ 3. Բ 4. Ա 4
282 Marsdensia erecta (R. B.) *Մարստենի կանգուն. յանուն Մարստեն բուսաբանի անգղիացւոյ. — Բ 3. Բ 4
283 Quercus Fenzelii (Ky.) Կաղնի Ֆենզլեան. — Գ 3. Բ 2. Բ 4
283 Quercus Calliprinos (Webb.) Կաղնի կատարա-գեղ. — Գ 3. Բ 2. Բ 4
284 Arundo Donax (L.) փ. Roseau à quenouille. Ե-ղեգն չարժուն. — Ա. 4
284 Typha angustifolia (L.) փ. Massette. Ձիլ նեղատե-րև. Ջրային եղեգն. — Ա 4
285 Lagonychium Stephanianum (M. B.) Նապաստա-կի-ականջ ստեփանեան. յանուն Ռուս բուսա-բանի միոյ. — Ա 3. Ա 4
286 Gossypium herbaceum (L. cult.) փ. Cotonnier. Բամբակ խոտեղէն. — Ա 3. Ա 4
287 Alnus Orientalis (Decaisn.) փ. Aulne. Լաստենի արևելեան կամ Բարտի. — Ա 1
288 Zizyphus Spina-Christi (L.) փ. Jujubier. Ցունա-պի փշուտ. — Ա 1. Ա 2
289 Contaurea carneola (Boiss.) փ. Centaurée. Տերե-փուկ. — Ա 2
290 Crategus pyracantha (L.) փ. Alisier կամ Allou-chier. *Ուժասոռ Հրափուշ. — Ա 2. Ա 3. Ա 4
291 Muscari Cilicicum (Ky.) փ. Muscari. *Մշկունի կի-լիկեան. զի Հոտ մշկոյ ունի. — Ա. 4
292 Ischarum eximium (Schott et Ky.) Իսկար? ազ-նիւ. — Ա 4
293 Arum spectabile (Schott.) փ. Arum. Նուիճ երևե-լի. — Ա 3. Ա 4
294 Erucaria Aleppica (Boiss.) Ճարճրուկ բերիացի. զի նման է ճարճրի կամ սոպեկի). — Ա 3
295 Tamarix Smyrnensis (Bunge). փ. Tamaris. Մոչա զմիւռնեան. — Ա 3
296 Teucrium creticum (L.) փ. Germandré. Լերդա-խոտ կամ Ջարօշ. — Ա 3. Ա 4
297 Ulmus campestris (L.) փ. Orme. Կնձնի դաշտաց. Ա 2. Ա 3
298 Celtis Tournefortii (L.) փ. Micocoulier. Լղզենի գուռնըֆորեան. — Ա 3. Ա 4
299 Fraxinus Syriaca (Boiss.) փ. Frêne. Հացի Ասո-րեաց. — Ա 2. Ա 3. Ա 4
300 Ficus carica (L.) փ. Figuier sauvage. Թզենի վայրի. — Ա 2

## Բ. Ցանկ բուսոց, ըստ անուանց.

## Գ. *Ցանկ բուսոց, ըստ հայ անուանց.*

*Աբարբիոն*, Euphorbia. Euphorbe
**Ալկանա*, Alcana
*Ականթ*, Acanthe
*Ականջուկ տ. Ճաղճղուկ*
*Ակրկարհա*, Pyrethrum. Pyrèthre
*Աղրադրուկ տ. Մրուանտակ*
*Անանուխ*, Mentha. Menthe
*Անձիտան*, Seseli
*Ասորեկ տ. Ճարճիր*
*Ափուր*, Calamintha. Calament
**Արեգնիծ*, Erysimum. Velar
*Արջնդեղ*, Nigella. Nigelle
**Աւազենի*, Arenaia
*Բամբակի*, Gossipium. Cotonnier
*Բարձուենեկ*, Abrotonum. Aurone
*Բեւեկնի*, Terebinthus. Terebinthe
**Բզնածարիր*, Hicracium. Epervière
*Բզրուկ*, Alsine
*Բոգ*, Ferula. Férule
*Գազար*, Pastinaca. Panais
*Գառնադմակիկ*, Sedum
**Գառնամանուկ*, Senecio
*Գեղձի*, Smilax aspra
*Գի կամ Գիհի*, Juniperus. Genévrier
**Գնտագլուխ*, Cephalaria
*Գնտածաղիկ*, Globularia. Globulaire
*Գոճամօրու տ. Բօչմօրուք*
*Դափնեվարդ*, Oleander Nérium. Oléandre
*Դափնի*, Daphne
*Եբենոս*, Ebenus
*Եզնագի*, Verbascum. Molène
*Եզնալեզու*, Anchusa. Buglosse
*Եզնախոտն կամ Եզնախոտ*. Stachys. Epiaire
*Եղեգն*, Arundo Donax. Roseau à quenouille
*Եղեսպակ*, Salvia
*Եղեւին*, Abies. Sapin
*Եղինձմայր*, Lamium. Lanière
*Եղջիւրենի*, Ceratonia Siliqua. Carrubier
*Երկրմայր*, Bunium
*Երնջան*, Eryngium. Panicaut
—— *Հոռոմ*, Gentiana. Gentiane
*Զամբուռ*, Thymus. Thym
*Զողալենի*, Cornus. Cornouiller
*Զոպա*, Hyssopus. Hysope
*Զուխրակ*, Origanum. Origan
*Թագաւորապսակ*, Fritillaria. Fritillaire *կամ* Couronne imperiale
*Թաղթ*, Cyclamen. Cyclame
*Թեղի տ. Կնձնի*
*Թեղօշ*, Pinus Carica
*Թզենի վայրի*, Ficus Carica. Figuier sauvage
*Իգաբողխտակ տ. Ակրկարհա*
*Իշառուոյտ*, Onobrychus. Sainfoin cultivé
*Իշաքեղ*, Alyssum. Alysson
*Լաստենի*, Alnus. Aulne
*Լդդենի*, Celtis. Micocoulier
*Լերդախոտ*, Teucrium. Germandrée.
*Լուադեղ*, Conyza
*Լօշտակ*, Bryonia alba
*Խազիրան*, Astragalus. Astragale
*Խալանջ*, Erica. Bruyère
*Խառածաղիկ*, Ranunculus. Renonculé
*Խարի*, Alkanna
*Խռնդաստ տ. Եզնագի*
*Խրտցակ*, Bromus. Brome
*Ծոթրին տ. Զուխրակ*
*Կազմորենի*, Ruscus. Fragon
*Կաթնխոտ*, Polygala
*Կակաչ*, Tulipa. Tulipe
*Կաղամախի*, Populus. Peuplier
**Կանթեղնիծ*, Campanula. Campanule
*Կատուախոտ*, Nepeta. Chataire
*Կղմուխ*, Inula. Inule
*Կնձնի*, Ulmus. Orme

Կնջիթ, Sesamum. Sésame
Կոծոծ, Acantholimon
Կոկոռ, Nymphea Nelumbo
Կոկոռճիկ, Chamæmelum. Camomille
*Կովացնծուկ, Primula. Primevère
Կոտիմն, Draba. Drave
Կոտմնտուկ, Iberis. Ibéride
Կորնգան, Cerastium. Céraste
—— Քաղցր, Hedysarum. Sainfoin
Կտաւատ, Linum. Lin
Կտրածի խոտ, Galium. Gaillet
Հազար, Lactuca. Laitue
Հազարտերեւեան, Achillea. Achillée
Հաճարի, Fagus. Hêtre
Հացի, Fraxinus. Frène
Հացհամեմ, Trigonella. Trigonelle
Հաւամրգի, Podocytisus. Cytise
Հերձի, Lentiscus. Lentisque
Հիրիկ, Iris.
Հողմածաղիկ, Anemone
Ձարխոտ, Adiantum. Capillaire
Ձիւնծաղիկ, Colchicum. Colchique
Ձիւնծաղկի տակ, Hermodactylis
Ճաղճղուկ, Gnaphalium. Gnaphale
Ճանդի, Scandix
Ճարճիր, Eruca. Roquette
Ճարճրուկ, Erucaria
Ճիլ, Typha. Massette
Ճլելեկ, Silene. Silénée
Մաթուզենի, Arbutus. Arbousier
Մախրի, Picea
Մահեկ, Taxus. If
Մայր, Cedrus. Cèdre
Մանուշակ, Viola. Violette
Մատիտեղն, Հովուի բիր, Polygonum. Renouée
Մատուտակ, Glycyrrhiza. Réglisse
Մեկոն, Papaver. Pavot
Մեղուամուշկ, Tanacetum. Tanaisie
Մեղրածուծ, Marrubium. Marrube
Մկանաղեք, Hypericum. Millepertuis
Մկնականջ, Myosotis
Մկնսոխ, Scilla. Scille
Մոշա, Tamarix. Tamaris
Մրուանտակ, Valeriana. Valeriane
Մրտենի, Myrtus. Myrte
Ցակրի, Rhamnus catharchicus. Nerprun

Ցունապի, Zizyphus. Jujubier
Նապաստակի ականջ, Lagonychium
Նգածաղիկ, Artemisia. Armoise
Նուիճ, Arum
Շահթառակ, Corydalis
Շահոգրամ, Dianthus
Շնախաղող, Atropa. Belladone
Շնախոտոր, Ornithogalum. Ornithogale
Շոճի, Pinus. Pin
Շուշան հովտաց, Convallaria. Muguet
Շրէշ, Asphodelus. Asphodèle
Շքլար (Ստիւրակ), Styrax. Alibousier
Ոլոռն, Pisum. Pois
—— վայրի, Ervium. Vesce
*Ոջլադեղ, Pedicularis. Pediculaire
Ոքող, Carduus. Chardon
Պառաւու ձար, Erigeron. Vergerelle
Պատատուկ, Convolvolus. Liseron
Պիստակ, Pistacea. Pistachier
Պոլտիկ, Tomate. Pomme d'amour
Ջղախոտ, Plantago
Ռետնի, Pinus Laricio
Սարդենի, Laurus. Laurier
*Սերկեւլիճ, Cotoneaster
Սէզ, Poa
Սին, Sorbus. Sorbier
Սոճի տ. Շոճի
Սոնիճ տ. Արջնդեղ
—— վայրի, Githago
Սոնոպրի, Pinus sativa
Ստիւրակ տ. Շքլար
Սօսի, Platanus. Platane
Վաւվաուկ տ. Իշաքեղ
*Վերոնիկ, Veronica
Վիգն կամ Վիկ, Vicia
Տերեփուկ, Centaurca
—— Մեծ. տ. Երնջան (Հոռոմ)
Տխկի, Acer. Erable
Տորոն, Rubia
Փլոմիս, Phlomus. Phlomide
*Քարկոտրուկ, Saxifraga. Saxifrage
*Քոսքուկ, Scabiosa. Scabieuse
Քրքում, Crocus. Safran
Քօշմորուք, Գոճամորու, Cistus. Ciste
Օձադեղ կամ Օձի խոտոր տ. Երնջան (Հոռոմ)
Օշնան, Saponarium. Saponaire

---

10. ԿԵՆԴԱՆԻՔ. — Ի քաջարոյս և 'ի ծաղկաւէտ տափարակս և բարձունս Կիլիկիոյ՝ են արօտատեղիք յոլովից արգի բնակչաց երկրին, ուր երկար ամսօք դադարեն և յածին. գի թէպէտ և յամռեան իսկ մարտի դալարանայ դաշտագետինն, այլ յապրիլի սկսանին անդէորդք ելանել յառաջին գահաւանդս լերանցն, ուր և կան ցկէս յունիս ամսոյ. ապա ելանեն 'ի միջին գահաւանդս, յ'7-8000 բարձունս, և երբեմն վերագոյն ևս՝ յամռեան յուլիսի, մանաւանդ ոչ կախթնտուքն. ունելով հովուացն ընդ ինքեանս շունս հզօրս մեծամեծս, ընդ արջուց իսկ մաքառողս, և էշս պարենակիրս: Ի վերջկոյս օգոստոսի սկսանին իջանել 'ի լերանց, և դեգերին մերձ 'ի սահմանս գիւղորայից ցհոկտեմբեր ամիս. յետ այնր իջեալ դադարեն 'ի ծովեզերեայս, ուր գի մեղմ է կլիմայն՝ կարեն արածել և 'ի ձմերանի: — Շահ մեծ է անդէորդաց և խաշնարածից և 'ի կաթանէ և 'ի կոգւոյ անասնոցն, և յասուէ գառանց և խոյից, որք բազմաթիւ իսկ են. և արդ առաջնորդեն մեզ ըստ կարգի բանիցս՝ թողուլ զանգործարան բերս երկրի և զանշունչսն, և մատչիլ 'ի տեսութիւն ինչ սուղ՝ կենդանականացն գոյից:

*Նախածանօթ Բարունին մեր Թովմաս՝ յազգէ պիտանեացն պաճարուց յիշէ «զԱյծեամն և Մաքիս վայրի, » վիր և վզ, Գոմէշ ». այլ և Եղն, Պլատան, ըստ միակ օրինակի գրուածոյն, որ ոչ թուի ստուգագիր յամենայնի. այլ յիշեալքն հաւաստարմութեամբ են. այսինքն զի ընտրելագոյնքն միայն նշանակին և երևելիք, վկայեալք և յայժմուցս. անծանօթն այն Պլատան կամ Պշատան որ ընդ եղին և ընդ այծեման յիշի՝ գուցէ գորշագոյն այծեամն իցէ, Եուրուււմա կոչեցեալ 'ի տեղացեաց, և գտանի 'ի դաշտս Աստանայ: Թէպէտ և ոչ կարիցեմ ստուգիւ հաստատել, այլ հաւանիմ թէ Մաքին վայրի իցէ սեփական կողմանցս կենդանիս այս՝ որոյ է պատկերս* (8). *զոր և քննեալ մեծ կենդանագէտն Պրանտ* (Brandt) *համարեցաւ միջադասել ընդ խոյն* Ovis Musimon (Mouflon), *և ընդ խոյն* Ovis Tragelaphus (Mouflon à manchettes), *և կոչեաց* Ovis Anatolica. *տեղացիք կոչեն Խօչ, որ հասարակ կոչումն է քօչից և առինց. որոշիչ ինչ տեսակին՝ համարեցաւ տափակութիւն ճակատուն քան զերկոցուն*



8. *Մաքի վայրի.* Ovis Anatolica.

*այլոց, և մերձաւորութիւն եղջերացն՝ որոց արմատք գրեթէ կիցք են 'ի գանկին: — Յաճախագոյն երևի 'ի գաւս Կիլիկիոյ և հզօր լեռնական ազգ վայրի Քօչից,* Capra aegagras, *վեց ոտնաչափ երկայնութեամբ, երագավազ և յոյժ դժուարորսալի, մեծագլուխ և լայնեղջիւր ուղղաբերձ կորածայր. ագին և մօրուս նման հասարակ այծից. գոյն մորթոյ և ստևուց՝ գորշ կամ թուխ պայծառ: — Վիր* (Cervus Dama, Daim) *'ի լերինս և Ցամոյր,* Gazelle, *'ի դաշտին Կիլիկիոյ առատ են յոյժ*[1]. *այծեամն ոչ այնչափ յաճախ տեսանի*[2]: *Իսկ զնշանց Կիլիկիոյ զարմանալի իմն ասէ հին բնախօսն Պլինիոս* (Ը. Ծ), *եթէ ընդ լոյղ անցանեն գնան ընդ բովանդակ տարածութիւն ծովուն՝ որ ընդ մէջ ափանց սորին և Կիպրոս կղզւոյ, իւրաքանչիւր յեցուցեալ զգլուխ իւր 'ի գաւակ յառաջագնացին. 'ի հոտոյ և ոչ 'ի տեսոյ՝ գուշակելով զցամաք կղզւոյն:*

*Ընդ ընտանի անասունս ոչ յիշէ Թովմաս զպախրէս, զի թէպէտ և պատուական են և սոքա, և քաջ կաթնա-*

1 Չիհաչէֆ, բ. 760-1:

2 Պարքըր, 346:

բեր կովք, այլ մանունք են, ոչ ակնապարարք այլ քմապարարք, վասն բարւոք արօտիցն, զոր 'ի վերդ յիշեցաք։ Իսկ Մաքիքն յիշեալք և խոյք արդարև մեծամեծք և ընտիրք են յոյժ, գեղմնաբարձք և մեծադմակք, զոր' որպէս և յայտ է, մղեալ և հալեալ՝ վարեն 'ի կերակուր փոխանակ կոգւոյ. յատկապէս զարդիս Գարամանի կոչի այս ազգ խոյոց, զանուն երկրին կրելով։ Պիտանի է ասր սոցին, յորմէ կորի ամի ամի մինչև 1000 կենդինար, երկու մասամբ սեաւ, և մի սպիտակ. հիւսուածն նուրբ է, այլ ոչ զուտ և մաքուր, զի 'ի քաշ գտեալն՝ նուազի իբր $^{40}/_{00}$, վասն որոյ անփոյթ լինին յայսմ մասին։ Զասս յագանելեաց՝ զասրն վարեն Թուրքմանք և 'ի հիւսուած կապերտից՝ քիլիմ կոչեցելոց և հռչակելոց յանուն Գարամանի, վասն նրբութեան և գունագոյն զարդուցն 'ի բուսական ներկոց. ասկս այսոցիկ 'ի համաշխարհական արուեստահանդիսի Վիեննայ պարգև տուաւ Ցուցի միոյ՝ որ տարեալ էր 'ի ցոյց[1]։ — Ցեղանց ազգէ յիշէ ոմն յԵւրոպէացւոց զՄշկահոտ եղին բարձր լերանց Տօրոսի, չորեքոտանաչափ անոտս բարձր եղջերօք՝ մանուածոյ ոլորիւք զարմանալքն, նուրբ և ընտիր մորթով. և թուի համազգի մեկապրոտ եղանցն, զոր յիշէ մերս Խորենացի 'ի հարաւակողման Մեծ Հայոց։ Ցայծեմանց ազգէ ծանուցաւ անուանեալն Capra Ibex[2]։ — Ընդ այծեմանց 'ի դէպ է իմանալ և զընտանին Այծ ոտևագեղ, որ 'ի հնումն յոյժ հռչակեալ էր, և մի 'ի նշանագոյն և շահաբեր ձեռագործաց վաճառուց երկրիս էր, յաւուրս մերոց պայազատաց՝ Ցփսի նոցին, յաճախ գնեալ յԻտալացւոց և կոչեցեալ 'ի նոցանէ Zambellotto կամ Ciambellotti։ Գործակալ վաճառականաց Փլորենտիոյ 'ի կէս ԺԴ դարու ծանուցանէ, զի ասրն և ցփսին վաճառէին յերկրի անդ մերում բոտ կշռով, որ կշռէր 15 հօխա տեղւոյն։ Վասն պատուականութեան ցփսոյն թուի թէ չտային թոյլ հանել զայծսն յերկրէն, զի ոչ յիշի 'ի պարգևագիրս թագաւորաց մերոց առ Իտալացիս, որպէս յիշին այլք յա-



9. Խոյ Գարամանի.

նանոց[3], իւրաքանչիւր սակիւ հարկի կամ մաքսի՝ զոր հատուցանէին վաճառաբարձքն։ — Որպէս առ սոքօք 'ի միջին դարս ազնուագոյն էր այծեայն Կիլիկիոյ՝ նրբութեամբ, 'ի հնումն՝ հռչակեալ էր խստութեամբն կամ թաւութեամբ. այլ թուի յայլմէ ազգէ այծուց հիւսեալ. և էր խարազն, զգենլի ճգնաւորաց. որ և յայնց ժամանակաց ցարդ առ Լատինս և առ արևմտեայս՝ կիլիկեան կոչի, Cilicium, Cilice. Պլինիոս յիշէ (Ը. ԽԶ) միայն զի 'ի Կիլիկիա կտրէին և զասև այծուց, այլ չասէ յինչ պէտս։ — Ցարքունի գանձ Հայոց սակ Ոչխարի էր չորս քարտէս, որ է փոքրագոյն դրամ կամ փող. Պախրէի՝ հինգ դրամ, և վասն կաշւոյ նորին վեց քարտէս. սոյնպէս և վասն կաշւոյ Գոմշու, զոր՝ իբրև ընտիր և պիտանի անասուն եցոյց մեզ Թովմաս. որ և առ նմին նախակարգէր զ'Վռ, ոչ գիտեմ ուրոյն պաճար կամ երէ, թէ ազգ ինչ գոմշոյ, կամ թէ սոյգ իսկ իւէ գրուածն։ Ի լճակս կամ մօրուտս ծովեզերաց Տարսոնի և Այասայ՝ է տեսանել յաճախ զբազմութիւն գոմշոց մխելոց 'ի ջուրս։ Ընդ պաճարեղինաց՝ զորս Թորոս Բ երեր ընծայ Մանուէլի կայսեր և զօրաց նորին, յիշէ պատմիչն «ոչխարս, » գոմէշս, պախրէս, կինճս, ձիս ազնիւս»։ Ցետինդ պերճ կենդանի, ոչ յիշի առ Թովմայի, թերևս զի չէր բազմաթիւ. այլ զի և ձիք երթային 'ի վաճառ՝ յայտնէ նոյն պարգևագիր Լևոնի Բ, միանգամայն և ծանրութեամբ հարկին պահանջելոյ, ընդ Ձի և ընդ Ջորի մէն չորս խաչանիշ բիզանդ հայկական[4], և ընդ Էշ՝ հինգ նոր դրամ։ Լաւութեան սոցին միանգամայն և նուազութեան վկայ է և դաշն նորին Թագաւորի ընդ սուլտանին Եգիպտա-

1 Տեվիս, 151։
2 Պաքքեր, 380։
3 Ի Պարգևագրի Լևոնի Բ առ Գենուացիս, յամի 1288։

4 Ի Հայ բնագրին փոխանակ անուան դրամոյն դնի . Թ . կամ " նշան . լատին թարգմանութիւնն ասէ Bissancios Stauratos, IIII. — Զհայկական դրամոցս յետոյ ուրեմն տացի ծանօթութիւն։

ցուց յամի 1288, յորում հարկեցաւ տալ ամ ըստ ամէ 25 երիվար ընտիր մալեալ (իքտիշ, اكديش) և 25 ընտիր ջորի։ Ազնուութեան երիվարաց և խնամով դարմանոյ վկայեն և կոյտք նոցին. զի 12,000 ձիոց սափ գումարել Հեթմոյ Ա. 'ի մարտի. և նա ինքն ետ թարգմանել յարար լեզուէ զարուեստն պայտարի։ — Ցարդ 'ի վաճառս երկրին երևի և կայի գոմշոյ, և այլ մորթեղէնք և մուշտակք վայրի անասնոց և գազանաց. 'ի հնումն անուանի էին յղկեալքն և յարդարեալ մորթք 'ի Մսիս, և կոչէին յայլազգեաց Միսիսիէ [1]։

Ցազգէ անտի գազանաց կամ երէոց վայրենեաց՝ մերս հեղինակ (Թովմաս) յիշէ միայն զԱրջ և զԻնձ. զերկոսին ևս յիշեն և արդիքս [2], ընդ որս և զԸնձառիւծ կամ զՅովազ [3]. յորոց մորթոյ կազմին համետք և թամբք երիվարաց ազնուականաց 'ի Կ.Պօլիս իսկ. Զիղնէյ համարի թէ գտցի և Առիւծ յԱմանոսեան լերինս [4]. յաճախագոյն ևս գտանին Լուսանն սևախանջ, Բորենն, Աղուէս մեծ և փոքր, գորշագոյն և սեաւ, Շնագայլ (չագալ) շատ. զայս իբրև նորանշան ինչ յիշէր Պըլոն փռանկ ուղևոր, 'ի ԺԶ դարու [5]. Վարազ, Այծառ վայրի, Որձն և այլ նմանիք. ընդ որս յիշելի են և մեծամեծ և հուժկու շունք հովուաց, և բարակք՝ խարտեաչք։

Իսկ երէ որսական առատ է յոյժ. յորոց մերս՝ յիշեաց միայն զԷղն, զՎիթ և զանծանօթն Պչատան կամ Պըատան, որ թուի ազգակից սոցին. զի և նոր բնախօս վայրուցն երկատեսակ ասէ վիթս, և նորատեսակ եղջերու մի՝ 'ի սարակս Պիւռամոսի։ Երամովին շրջին վիթք և եղինք 'ի դաշտավայրին՝ 'ի միջի եղջերենեաց և թփոց, և ընծայեն դիւրապատրաստ որս 'ի խորտիկս։ Ցիշի 'ի պատմութեան երթալ Թորոսի Բ ընդ եղբօր իւրոյ Մլեհի «յորս երէոց ընդ Մսիս և ընդ Ատանայ 'ի մէջ»։

Բազմահոյլ ևս են թևաւորքն կենդանիք. յորոց մերս Թովմաս յիշէ, «Սալամ, Կաքաւ կարմիրատն և Տուռէճ, » Արօս և Արագիլ, Բադէ և Լոր». այլ և զՍիրամարգ իսկ. յետինս ոչ յիշի արդ, իսկ առաջինքն՝ է որ յանուանէ, և է որ խառն վկային առատ յոյժ լինել, մանաւանդ Արօսն (Outarde) 'ի դաշտավայրի, և ազգ մի նմանի այլ փոքր՝ բիւրաւոր բազմութեամբ երևի երբեմն ամպատեսակ վերացեալ յօդս. նման նոյին և Տուռէճն և Սալամբ (Francolin), և Լոր՝ ամենայն ուրեք երևին. և 'ի մայրիս պարարտահամ Աքլորն վայրի (Tetraogallus). ծանօթ է և փասիանն [6] յայժմուս, թերևս նոյն ընդ Սիրամարգի մերոյ հեղինակիս, եթէ ոչ գտցի այն ուրոյն։ Իսկ 'ի մանունց՝ Տատրակք կամ Հաւիպալք այնքան առատ են, զի մարթի, ասէ Պարքըր, հարիւրս չափ ըմբռնել 'ի միում աւուր. Սարեկք և այլ մանր թռչունք՝ ճնճղկաց ազգայինք։ Ցորսոյ հաւուց և կաքաւուց՝ յոր պարապէրն՝ յաջողեաց Ռուբենի, ըստ աւանդութեան պատմչաց, գալ տիրանալ Բարձրբերդի, և սկիզբն առնել նորոյ տէրութեանն Հայոց։ — Ըստ ցամաքայնոցն առատ են և ջրասէր հաւք։ Ի վայրենի հաւուց ծանօթ են Բու, Արծուի, Անգղ հասարակ և եգիպտական սևաթև անգղն (Perinopterus), և լերկապարանոց անգղն մեծ քան զգառնորսակն (Lammergeyer) Ալպեաց [7]. Ագռաւք, Կաչաղակք և Շնորորք, ազգ ազգ Բազայից, յորս և ընտիր որսականն, զոր վարեն ձոխք երկրին՝ յորս հաւուց և մանր երէոց։ Ցիշեցուք աստանօր և զաւանդեալն 'ի հեթանոս պատմչաց՝ Սելևկիականն ճաւս մարախասպանս. զի ասեն, 'ի Սելևկիա տաճար մի էր Սարպեդոնեանն Ապոլոնի (Apollo Sarpedonium), ուր գումարէին հաւքդ պիտանիք 'ի ջնջել զապականիչսն անդոց. այլ արդ ընդ դիցն անհետացեալ թուի և ազգ թռչնոցդ. զի 'ի լինել երբեմն հարուածոյ մարախի, յետ բարձման թագաւորութեանն Հայոց, թագաւորն Կիպրոսի առաքեաց միանձունս Հայս բերել 'ի Ս. Ցակոբայ վանաց լերին Մասեաց՝ զջուրն մարախահալած։ — Ծանօթ են և Ջըրշունք, և Կրիայք նոյին բնակակիցք. այլ ոչ շատ առատ համարին երկկենցաղ կենդանիք։ — Ի սողնոց՝ Օձ և մանաւանդ սեաւն՝ զոր Ասպիս կոչեն՝ երևի շատ 'ի դաշտակողմանն։ — Ի գետս, որպէս 'ի Սարոս և 'ի Կիւդնոս, առատ են ձկունք, ազգակիցք՝ այլ ոչ համատեսակք ձըկանց Որոնդէս գետոյ Ասորւոց. բայց 'ի Կիւդնոս միայն կարմրախայտ գտանի 'ի սահմանս 3000' բարձրութեան, և առատ յոյժ։ — Զարմանալի իմն առատութիւն կամ բերս ձկան պատմէ Վիլեպրանտ 'ի սահմանս Անաւարզայ, 'ի սաստկարուկս աղբեր գետոյ միոյ՝ զեօթն օր, երեք յառաջ և երեք զկնի Ծաղկազարդին, զոր ժողովեալ ապխտեն բեռն բեռն. և համարին նշանայայտ զտակի Հայոց և Լատինաց, թէ ո՛ր իցէ ուղիղ, և մերոյս ոճոյ հաւանեցան, ասէ, թագաւորն և Հայք, ութ աւուրբք յառաջ քան զտօնն. և թէ Ցովհաննու Մկրտչի աւեն զայս հրաշագործեալ։

Բազմազգի թռին և մանունքն կենդանիք, Մլջատք և թիթռունք, այլ չեն քաջ հետախուզեալ և հաւաքեալ. 'ի գարնայնի գտանին յոլովութեամբ, յամարանի նուազեն. այլ և 'ի փոքր ինչ հաւաքմանն՝ գտան ոչ սակաւ նորատեսակք, իբրև քանւհինգ 'ի հարիւրոց, զոր ժողովեաց Քոչի յաղբերականս ձորոց և 'ի լերինս. յորս նշանաւոր մեզ թուին 'ի կիսաթևիցն ազգէ՝ երկու նոր տեսակք Ճպուռից, որք յամենայն օգոստոսի լնուն զօդս ծանօթ թևաւախիկ ապաղակաւ. և թիթեռնս այս թևափետուր (10). որոյ վերին թևք դեղնագոյնք են, պայծառ և ազորկ նիշս ունելով սևակս. նոյնագոյն են և փետրանմանքն։ Զայս յափունս միջնակողման ծովեզերաց Կիլիկիոյ՝ ընդ մէջ Մերսինոսի և Այասայ՝ տեսեալ բազմաթիւ, ձևագրեաց Պոֆորդ ծովապետ Անգղիացի. և համարեցաւ լինել զկոչեցեալն 'ի բնախօսից Panorpa Coa, որպէս թէ նախ 'ի Կով կղզւոջ գտեալ։

1 Ապուլֆէտա։
2 Զիհաչէֆ, Բ, 612։
3 Պարքըր, 376։ — Զիհաչէֆ, Բ, 613։
4 Զիհաչէֆ, Բ. 603։
5 Il y a une manière de petits loups par la Cilicie, et aussi generalement par toute Asie, qui emporte tout ce qu' il peut trouver des hardes de ceux qui dorment l' esté hor du Carabacara (Քէրվան-սէրայ). C' est une beste entre loup et chien... Il ne va jamais seul, mais en compagnie, jusques à estre quelquefois 200 en sa trouppe, tellement qu' il n' y a rien plus frequent par Cilicie: pourquoi allant en compagnie font un cry l' un aprés l' autre comme un chien quaud il dit *hau hau*. — BELON, Les Observations, etc.
6 Րիդդէր, Erdkunde. ԺԹ. 229։
7 Էնդուըրսհ, Բ. 81։

11. ԿԼԻՄԱՑ. — Ցետ տեսանելոյ զերեսս երկրին և զհանգամանս և զպէսպէս բերս, հարկ է ակնարկել և յօդս 'ի վեր, 'ի ծանօթութիւն Կլիմային: Որ ոք նկատիցէ զարգասաւորութիւն գետնոյն, զառատութիւն բազմատիկ բերոց, նա և զաշխարհագրական դիրս երկրին, հարկաւորի մի 'ի բարեխառնագոյն և կենսատած կողմանց աշխարհի խոստովանել զայն, բայց 'ի փորձոյ ոչ հաւաստի. ոչ թէ առողջասուն, այլ մանաւանդ վատասուն համարեալ է Կիլիկիա՝ ըստ դաշտայնոյն մասին. և այս ոչ միոյն յայժմուս, յորում յերկար անփութութենէ բնակողացն և ատպատակողաց՝ ընդարձակեալ են ճախնային սահմանք 'ի ծովակողմանս և 'ի գետակողմանս ուրեք, և առթեն տենդ միաստակար ամարանի՝ որ տևէ ցհոկտեմբեր ամիս, այլ և 'ի հնումն ոչ քաջ առողջ վըկայի. զորմէ թէպէտ չասեն ինչ հարք մեր և հեղինակք, այլ ժամանակակիցք նոցին այցելուք օտարք՝ զնոյն հաւաստեն. առ որս՝ յորժամ խնդիրք լինէին՝ յԺԳ և ԺԴ դարս՝ խաչակրութեան և պահպանութեան երկրին քրիստոնէից և պաշտպանութեան մերայոցս, զգուշանային բնակեցուցանել անդ զօտարս. մինչև ասել ուրուք եթէ 'ի 4000 հեծելոց՝ հազիւ 500 մնայցեն 'ի լնուլ տարւոյ միոյ. և յորժամ բանք լինէին զայսմանէ 'ի մեծի սինհոդոսին Վիեննայի 'ի սկիզբն ԺԴ դարու, Էնրիկոս արքայ Կիպրոսի գրէր առ քահանայապետն Կղեմէս Ե, այնքան ախտաբեր լինել երկրին յամարանի՝ մինչև ամենայն բնակչացն խոյս տալ 'ի լերինս, իսկ մնացելոցն 'ի դաշտի՝ տանջիլ ջերմամբ, և յոլովից մեռանել[1]: Ցառաջ քան զսոսա, իբրև յամս 1261-2, Խարաման Թուրքմէն 'ի սկզբան երկրակալութեանն՝ երգիծանօք նշաւակէր զայս, պատգամ յղելով առ Հեթում թագաւոր, թէ « Համբերեա փոքր մի, մինչև աշնանային հողմն սրբեսցէ » զպառնութիւն երկրիդ քո. զի մի յորժամ գայցեմ » տկարանայցեմ և ոչ կարիցեմ գործել ինչ »: Ցայտ է թէ առաւել ևս անտանելի էր օդն՝ եկաց և օտարաց, որպէս և մեկնակի ասեն այլք[2]: Այլ քանզի յայտ է և այն, թէ յայնժամ առաւել խնամեալ և մշակեալ էր երկիրն, անտառք և ծառաստան յոլովագոյն, ճահիճք և մօրքնուազագոյն, վասն որոյ և ոչ որպէս յայժմուս՝ վատթար: Սակայն օտարոտի իմն թուի վատառողջութիւնն. զի պատճառ արտաքուստ չերևի՝ բաց 'ի մօրիցն. այլ համարի ոմն զնոյնատիպ ջրոց ծաւալումն ընդ երկրաւ. քանզի յայտնապէս իսկ զվերին երեսն տեսաք յողողմանց գետոց կազմեալ, որոց ստորասուզելով խոնաւութիւն յամառնային երկարատև տապոյ վերացնդեալ՝ առթէ զտենդն. այս ախտ յաճախ պատահէ արդ 'ի սահմանս Տարսոնի, որ 'ի հնումն գուշակի բազմարնակ լինել. այլ զարդիս ակներև իսկ են ճախճախուտքն՝ ոչ հեռագոյն 'ի ծովակողմանէն, որպէս և մերձ 'ի գետաբերանս. այլ և 'ի վերնակողմն իսկ առ Անաւարզաւ՝ նշմարին մօրք և ճահիճք: — Որքան խիթալի է կլիմայ դաշտակողմանն, այնքան զուարճալի և առողջասուն՝ վերնակողմանց և գահաւանդից Կիլիկիոյ, զոր և դիւրին է գուշակել. որպէս և զայն՝ զի կարճամեան լինի յայն կողմանս, մինչ 'ի ստորինն գրեաթէ երբէք ոչ նստի ձիւն, և Նորատեսիլ իմն համարի եթէ երբէք աւելի քան զաւուրս ինչ ծածկեսցի գետինն, որ 'ի կէս ամսեան փետրուարի երևեցուցանէ հոյլս ծաղկանց գարնայնոյ: Զայս զգացումն ցուցանէ Պատմիչն Կիլիկեցւոց, նշանակելով յամի 1272 յաւուր տօնի « Մկրտութեան Տեառն. . . եկն ձիւն առ » հասարակ յաշխարհն Կիլիկիոյ, մինչև առ ափն ծո»վուն Ովկիանոսի »: Բայց և 'ի լերինս փութով զօրանայ ներգործութիւն ամարայնոյ, վասն որոյ և սաւնամանիքն վաղվաղ լուծանին և վարարեն զգետս, յորմէ միասի դաշտն. զի յորդութեամբք ծաւալացեալ 'ի ցածնուլն 'ի սկիզբն ամարայնոյ՝ ձևացուցանեն ճահիճս 'ի տղմուտ գետնի և ապականեն զօդս. վասն որոյ և յամսեան իսկ մայիսի սկսանին քաղաքարնակքն 'ի հով ելանել[3]: Չիք երկբայել թէ զգաստ և երկայնամիտ տնտեսութեամբ մարթ է դիւրել զհունս գետոց՝ առ ուղղակի հոսումն 'ի ծով, բարգաւաճել զմշակութիւն և զծառաստունկս, ցամաքեցուցանել կամ նուազեցուցանել զճախճախուտսն, և այսպէս լաւացուցանել զկլիմայն, որով և աճեցուցանել զբնակիչսն: — Անձրևք 'ի հոկտեմբերի սկսանին, և ամարանի գրեաթէ բնաւ չանձրևէ. պայծառութիւն անամպ երկնից՝ զայրացուցանէ զտապ տօթոյն, և խամրէ զդալարութիւն դաշտին, յորում հազիւ զօրեն տոկալ ծառք հաստաբունք. աստիճան ջերմութեան բարձրանայ հասարակօրէն ց'25° Ռէօմ. և 'ի գիշերի ևս ոչ իջանէ քան զ20°: Ի լեռնակողմանս՝ 'ի հոկտեմբերի սկըսանի իջանել ձիւն, և ստիպէ զմեստաղահանան ապաւինիլ 'ի ձմերոցս. մինչև գարնանաբեր անձրևք մարտի լուծցեն, և ապրիլ երևեցուսցէ մի ըստ միոջէ զերփն երփն ծաղկանց՝ ցամիսն յուլիս, յորում զօրանայ և անդ տօթն,



10. Panorpa Coa. (Տես էջ 32).

1 Terra enim Armeniæ adeo est infirmissima, extivo maxime tempore et infecta, quod habitantes ejus omnes fugiunt, ipse extiviali tempore ad montes, infirmitatis timore: si qui vero remanent in planis, sic infirmitatibus afficiuntur et morte, quod de ipsis pauci remanent.

2 Զոր օրինակ քարտուղարն Վենետկեցի գրէր առ դուքսն. Terra Armeniæ alienegenis est infirma. Այսպէս և պատմիչ նոցին և բարեկամ մերայոցս՝ Սանուտոյ Դորսելլոյ:

3 Խնճիճեան Հայր յիշէ զատ յայլոց ոմանց զհովսս զուարճալիս Հօրդոսմ, Խոսկեսլէն, Անմանա, Պոսլոնման և Վոհկա: — Նոր Հայաստան, 356:

և ծաղկունք ալպեայք միայն բարգաւաճեն 'ի ծմակային վայրս, յորս ոչ ցոլասցին արեգակնաճայեաց երեսք ապալեր քարաժեռից. 'ի կէս սեպտեմբերի վերադառնայ զովութիւն։ Վերին գաճաւանդքն 'ի կիսոյ հոկտեմբերի ցմայիս ամիս համակ ծածկին ձեամբ. 'ի միջակս մարթ է իբր երկու ամսով նուազ ասել զձմեռն. շատք 'ի գագաթանց կամ կողից հսկայաձև լերանցն՝ ընդ ամն ողջոյն ալիտակազգեաց երևին, և այլք հազիւ զերծանին 'ի տապագին ճառագայթից հարեալք։ — Երկար և յարատև քննութիւնս չափխառնութեան կամ աստիճանաց ջերմութեան և ցրտութեան զանազան կողմանց Կիլիկիոյ՝ ցարդ չէ արարեալ ուրուք, կամ ոչ 'ի մեր ձեռս հասեալ. այլ սակաւամասնեայ ինչ, և ոչ 'ի միում վայրի, վասն որոյ և աւելորդ համարիմ յիշել. այլ թերևս ճաշակ ինչ սիրողաց մատուսցեն՝ նախածանօթ բուսաբանին Քոչեայ քննութիւնքս չափխառնութեան ջուրց աղբերաց ոմանց լեռնակողմանցն, յամսեան յուլիսի 1853 ամի։

| Աւուրք | | Անուանք տեղեաց | Ջերմութիւն (ըստ Ռեօմ.) | | Բարձրութիւն |
|---|---|---|---|---|---|
| | | | Ջրոյ | Օդոյ 'ի շուքի | Չափք [1] |
| Յուլ. | 2 | Փունղար մաղարա 'ի Գարլըպօղազ, ծորաղբիւր 'ի կրային երկրի. | 9 | 17 ½ | 1960 |
| | 3 | Ծորաղբիւր 'ի Քէչլիպէլի. | 9 | 19 | 2650 |
| | 4 | Սու Նէտերէ գետ 'ի հովանւոջ, 'ի միջօրէի. | 14 | 20 | 1450 |
| | 9 | Ի Կիւլէկ մաղարա, ցայտաղբիւր յարդեսեան գետնի. | 7 | 18 | 2086 |
| | 11 | Ի Նեղուցս Կիլիկեան դրանց, ծորաղբիւր առ մաքսատան. | 9 | 21 | 1010 |
| | 13 | Կուլուկ ? 'ի Կուսկութա հովտի, ծորաղբիւր 'ի կրային գետնի. | 4 ½ | 20 | 2055 |
| | 14 | Ի Գըզըլթէփէ, ծորաղբիւր 'ի կրային գետնի. | 8 | 13 | 2700 |
| | 21 | Աղբիւր 'ի Պուլղար մաղարա, յապառաժի. | 1 ½ | 10 | |
| Սեպտ. | 11 | Աղբիւր յԱնաշա, 'ի վիմուտս, առ մզկթին. | 2 ½ | 22 | 1310 |
| | | Այլ աղբիւր, անդ յաւերակս. | 3 ½ | 22 | 1310 |
| | 21 | Ակունք Կիւղնոսի. | 5 | 13 | 1425 |

Նոյն բնագէտ փոփոխական ասէ զչափխառնութիւն աղբերց Գզըլթէփէի, և համարի զայս 'ի սակս հրաբղխային կազմածոյ ընդերաց գետնոյն. յոր սակս և ջերմութիւն սորին և բուսաբերութիւն առաւելու յոյժ քան զհիւսիսակողման լերանցն։ — Նոյն դարձեալ ասէ ոչ սակաւ ազդել և հողմոց՝ յաստիճան ջերմութեան և 'ի ցամաքութիւն օդոց. զերիս ամիսս ամարանի՝ յորում քննէր, առաւելապէս շնչէր հողմն 'ի Հ. Հ. Եղ. և յաճախ փոթորիկք 'ի բարձրաւանդակաց Գարամանի ուժգնակի շնչեցեալք զովացուցանէին զօդս։ Շնչեն և 'ի ծովակողմանէն հարաւային հողմունք խորշակաբերք, և զամրական աստիճան ջերմութեանն 20°-22° Ռ. ամբառնան ց'26-28°. ժամանեն և 'ի լեռնակողմանս, անհանգստեն և ազդեն ջերմն և թանչս. գէթ այսպէս հանդիպեցաւ յամի քննութեան բնագիտին (1853), յորում հազիւ երբեք լուաւ հնչումն հարաւ-արևելեան հողմոյ։

Անձրևք, որպէս 'ի վեր անդր նշանակեցաք, 'ի վերջկոյս աշնայնի սկսանին յորդառատք՝ 'ի դաշտագետինն, մինչև դժուարանցիկս առնել զչահռաճ պողոտայս. իսկ յառաջին գաճաւանդս յաճախեն յաշնայնի և 'ի գարնայնի. 'ի կողմանս անտառաց դուն ուրեք լինին տարափք անձրևաց. 'ի վերագոյն լեռնասահմանս՝ հազիւ երբէք. այլ 'ի միջին ալպեայս, այսինքն 'ի ստորև բարձրաբերձ պարսպաց լերանցն՝ իջանէ առատ անձրև, և դժուարակոխս առնէ զանցսն և զկիրճս։ Զպակասութիւն անձրևոյ դալարուտ բարձրաւանդակաց՝ լնուն ցօղք և թաթաւք. և առաւել ևս մշտաբուղխ աղբերք ոմանք, այլ սակաւք են այսպիսիք. միայն 'ի հիւսիսային կողս բարձրագոյն լերանց՝ գոն առատաբուղխ ծորանք. են և 'ի հարաւայնումն՝ 'ի բարձրութեան 3800-4200 ոտից, որպէս յԱնաշա, 'ի Գանձին, 'ի Լամբրուն. բարձրագոյնք ևս՝ 5000' 'ի Չիֆտլիկ լերին, 'ի Կիւլէկ գալէ, 'ի Սու Նէտերէ, յԱղաճ քիսէ, և Կիւղնոսի աղբերակն, որք և հզօրագոյնք են քան զայլս յաղբերաց. և ևս բարձրագոյնք ց'5500' են, 'ի Կուսկութա հովտի՝ Կուլուկ աղբիւր, աղբերք Գարլըպօղազի և կապարահանիցն, Փաշա-օլուգ 'ի վերոյ Տանձուտ գալէի, և որ յարևելակողմն 'ի Կէյիքտաղ լերին։ Անդրագոյն ևս յ'8000' բարձրութեան՝ Գօճագ աղբիւր 'ի կողս Գզըլթէփէի, Գարակէօլ լիճ, Դաշօլուգ աղբիւր, Մէճիտլիք սու, աղբերք Քէչլիպէլիի և Մայտանի։ Վերագոյն քան զսոսա յ'9000' բարձու գոն աղբերք 'ի Սըչան-կէօզիւ ? լերին և յԻւչթէփէ, 'ի վեր քան զ9000'. որպիսիք են և 'ի հիւսիսակողմն Մէտտէսիզի՝ 'ի ներքոյ յաւերժական սառամանեացն. բայց բուսաբերութիւն բարձանցն ոչ այնքան 'ի սոցանէ օգտի որքան 'ի ցօղոյ գիշերայնոյ։

1 Քոչի 'ի վիեննական ոտս նշանակեալ էր զբարձրաչափութիւնսն, զոր վերածաք յուսումնական կամ 'ի տասնորդական Չափս։

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ

12. — Յետ յանդիման կացուցանելոյ փոքր 'ի շատէ զբնական երևոյթս և զբերս երկրին Կիլիկիոյ, որչափ ինչ յայտնի էր մեզ, պահանջէ կարգ բանիս, մինչև մխեալ յաշխարհապատումն՝ ակն արկանել և 'ի բնակիչս նորին՝ որպիսիք արդ գտանին և որչափ։ Թիւն՝ ոչ միայն որպէս և յայլ նահանգս արևելից՝ դժուարատուգելի է, վասն պակասութեան կանոնաւոր համարագրի, այլ ևս առաւել վասն կէս ինքնագլուխ և վրանաբնակ ժողովրդեանն, որ է մեծ մասն բնակչաց կամ ունողաց երկրին, և անմարթ է մերձաւորաբար իսկ համարել զսոսա։ Յօսմանեան վիճակագրութիւնս և առ ուղևորս ոմանս եւրոպէացիս՝ թիւ համօրէն բնակչաց Կիլիկիոյ, գէթ նահանգին Ատանայ՝ որ զմեծագոյն մասն ունի երկրին նուաճելոյ երբեմն 'ի մերոց պայազատաց, համարի ըստ ոմանց 150,000 ևեթ[1]. ըստ այլոց կրկին նոյնչափ[2]. այլ նուազ քան թէ շատ երևին թիւքդ. մանաւանդ եթէ իցեն ստուգիւ, որպէս գրեն ոմանք, 300 գեօղք միայն 'ի դաշտային մասին, և 300,000 բնակիչք 'ի նոսին, և բազմաւոր տոհմք այլանուն վրանաբնակաց և սարոտանեայց. ևս առաւել եթէ և յուշ ածիցեմք զբազմութիւն մարդկանն՝ առ տէրութեամբ մերազգեացս, որք և անդուլ պատերազմօք և հարուածովք նուազեալ՝ տակաւին կարէին զօր գումարել, և 'ի դիմի հարկանել օտարաց, ցաւուրս Լևոնի Գ։ Բազմամարդագոյն յայնմ հարստութեան երևի ժամանակ երկար թագաւորութեանն Հեթմոյ Ա, որ կարէր գումարել 12,000 հեծեալս և 50,000 հետևակս. և երբեմն՝ ասի՝ տասն բիւրուք արշաւանս արարեալ 'ի կողմն Գարամանի։

Թողեալ զթիւն՝ մատիցուք 'ի ցեղս բնակչացն. յորս առաջին դասին արդ Թուրքք (Օսմանեանք) վասն տիրողութեան երկրին, և ոչ վասն առաւելութեան թուոյ, զի ըստ այսմ գերազանցեն Թուրքմանք՝ մեծագոյն մասամբ վրանաբնակք, զատուցեալք 'ի բազմաթիւ տոհմս, զորս աշիրէթ անուանեն Թուրքք, և 'ի վիճակագրութեան երկրին նշանակեն իբրև առանձին վիճակս՝ զտոհմս Ատանայ նահանգի (վիլայէթ), Հաճիլի, Մէնեմէնճի, Աֆշար, և այլն. յոլովագոյն ևս յԻչէլի նահանգի, որ է կողմն Սելևկիոյ, յորում՝ Սինանլը, Քէլլի, Էրէմլի, Բուլաճը, Գարա Բուճուլու, Գարա Հաճիլի, Թաթար, Կիւրճի, Պագչիչ, Սանտալը, Խայր իլի, Քիւպրիանլ։ Ի սկիզբն դարուս՝ աշխարհագիր մեր Ինճիճեան յիշէ զտոհմս Շամպէյատի, Գարագայալը, Սգճա գօյունլու, Քէհլիվանլը, Անամալը, Տէտէկալը, Գարալար, Ճէրիտ, Բօզտողան, և այլն։

Հզօրագոյն 'ի նախայիշեալքդ են տոհմք Աֆշարաց, եկեալք 'ի կողմանց Պարսից. ունէին զմիջոց Սսոյ և Մարաշոյ, և յաճախ մաքառէին ընդ դրացի տոհմս սփռեալս 'ի դաշտին Սսոյ, յորս անուանի Սարխանտ օղլու, որոյ տոհմապետ էր Մօրթազ Աղա՝ 'ի ժամանակի քննութեան կողմանցն 'ի Քոչեայ, յամի 1839, որ ասպընջական եղեալ ուղևորին՝ ետ նմա և պահապանս 'ի ըզգուշութիւն յԱֆշարաց։ — Հզօրագոյն ևս տոհմ է 'ի հիւսիսոյ Սսոյ և 'ի միջագետս երկուց առաջից Սարոսի՝ Խօզան կամ Քօզան օղլու, յոր անուն կոչի և երկիրն և լերինք, ընդ որոյ իշխանութեամբ նուաճեալ էր և Սիս։ Որդի 'ի հօրէ պայազատելով ազատաբար վարէին տոհմապետքն, մերթ հակառակութեամբ ընդ միմեանս և մերթ հաշտութեամբ, երբեմն նուաճեալք և յաճախ ապստամբք յՕսմանեան պետութենէ, կամ դոյզն ինչ հարկ հարկանելով. որպէս երբեմն նման նոցին և մերձաւորակքն՝ ազատասուն Հայք կողմանց Զէյթունի, Հաճնոյ, Պէյլանայ և Կեավուր լերանց. այլ յետ պատերազմաց զօր ետուն ընդ պետական բանակին՝ յամի 1866, նուաճեցան և Հայք և Թուրքմանք. թէպէտ և տակաւին յոլովք հայրենի օրինօք և առանձնաշնորհութեամբք վարին. իցեն արդեօք դեռ ևս ըստ առաջին օրինակի ազատակեացք ոմանք։ — Վասն վաչկաչու տեղափոխութեան յոլովից 'ի տոհմիցն՝ հասարակաբար Եիւրիւք (գնայունք) կոչին 'ի Թուրքաց, և վասն դեգերանացն կամ ձմերելոյ 'ի դաշտավայրին՝ Զուգուր-Թիւրքմէնք։ — Արժան է յիշել և զմեծ տոհմն Ռամատան օղլու, որ երբեմն իշխանաբար և պայազատօրէն տիրէր միջակողման Կիլիկիոյ, այլ այժմ ոչ հաշակի։ — Թուրքմանք ազգակիցք են Թուրքաց իբրև 'ի միոյ բնէ, այլ ոչ և 'ի նմին ոստոյ։ Առաջին եկ նոցին համարի յարշաւանին Սէլճուկեանց 'ի ԺԱ դարու 'ի Փոքր Ասիա. նաև սկիզբն հարստութեան Թուրք Սուլտանացն Իկոնիոնի՝ 'ի սահմանակցութեան Կիլիկիոյ, զուգաժամանակ հանդիպի սկզբնաւորութեան մերոցս Ռուբինեան պայազատութեան (յամի 1075-80)։ Հաւանօրէն յետ այնր յայլ և այլ ժամանակս եկին յարևելից այլ ևս գաղթականք, և յարեալ 'ի նախնեան սփռեցան շուրջ զսահմանօքն, յառաջ քան զտիրապետութիւն Օսմանեանց։ Պատմիչն Ռուբինեանց յիշէ և իբր քսան ամօք յառաջ քան զայն, յաւուրս Միքայելի Զ կայսեր (1056-7) եկեալ զԹուրքս և կալեալ զկողմանս Ատալիոյ, Ուճի[3] և Իկոնիոյ. և յետ դարու միոյ (իբր յամի 1173) 'ի գալ Մանուէլի կայսեր յերկիր սուլտանին,

1 Լանկլուա։

2 Պարքըր։

3 Յիշէ և Վարդան Պատմիչ (Զ.) զԹուրքս Ուճի, որք ամօրեայ ժամանակաւ պատերազմեցան ընդ Փրետերիկոսի կայսեր յամի 1190, օգնականութեամբ որդւոց Խլիճասլան սուլտանի, 'ի սահմանս Իկոնիոնի, և չարաչար հարան 'ի նմանէ։

բառ այլոց պատմչի, «Եկեալ Թուրքմանք՝ յԻլչէն, անկան » 'ի վերայ վերջաւորացն (բանակի կայսերն), և կոտորե- » ցին 'ի նոցանէ արս 12000»: Գուշակի 'ի բանիցս զի նոյն Իլչ է նահանգն Իչ-Էլի կոչեցեալ մինչև ցայժմ, և է գետաձորոյն Կիւդնոսի, ուր և ցարդ աւելի քան ըզ-տասն տոհմք Թուրքմէնից առանձին վիճակաց բնակեալ գրին 'ի դիւանս Օսմանեան դրան: — Պատմիչ մեր յիշէ զաւազակապետութիւն Սարում անուն Թուրքմանի 'ի գեղա-քաղաքն Կլունկեան յամի 1258, և յետ սակաւ ամաց զսկիզբն երկրակալութեան Գարամանն տոհմի՝ «Ի խա- » բանոյրձեան խոմպլիսացն ցեղէն, (սակալով, փոխանակ » Թուրքմանի) Խարամանն անուն», որ ապրեալ ընդ մէջ տէրութեանց Իկոնիացւոց և Հայոց՝ եհաս զաւաա



11. Բնակիչք Տարսոնի.

'ի նոցանէ. և թէպէտ վանեցաւ և 'ի Հայոց զաւակքին, բայց յետոյ ստրունգք նորա՝ զօրացեալ կալան զմիջոցս Կիլիկիոյ և Իսաւրիոյ: Լիցին բանք զոցանէ և 'ի տեղագրութեան Լարանդայ:

Նման Թուրքմէնից կենցաղավարին և Քիւրդք, զի են և յազգէ սորա 'ի Կիլիկեայս, ոչ միայն վրանաբնակք թափառիկք, այլ և հաստատաբնակք, որպիսիք աւին ըն-նել և յԱմանեան լերինս. ոչ է յայտ ժամանակ գաղա-տեան սոցա յերկիրս յայս. յիշին անդստին և յետս Թ դարու յամուրս լերանց Տօրոսի, յաւուրս Վասիլ Ա կայսեր[1]: Եկին և յետ կոյս ԺԲ դարու (1187-96) 'ի Կիլիկիա՝ Քուրդք զերծեալք 'ի մեծէ պատերազմէ՝ զոր ետուն ընդ Թուրքս 'ի սահմանս Միջագետաց, ըստ պատմչաց Ասորւոց[2]: — Գոտանին և Գեզրգաշք աղանդաւորք նման Եզիտեաց, 'ի լեռնակողմանս ափանց Կիւդնոսի, այլ սակաւաւորք թուին: — Ընդ մէջ Անաւարզայ և Մսայ ճայռակին Հայոց Քուրդք, որոց անուն՝ սայ կարծիս մերազգեաց խառնելոց ընդ Քուրդս, և են վայրագագոյնք չարաճճիք. ոչ ինչ պակաս քան զնոսս և Փողան տոհմն, որ նոյնպէս հայաւերին համարի, և հաստատեալ 'ի Սեաւ լերինս, յորոց իջանեն յարօտ 'ի դաշտս Մսայ և Անաւարզայ. զի ամենեքին սոքա Թուրքմանք և Քուրդք և Հայուկք և նմանիք սոցին՝ տաւարածք են, ամարանի 'ի բարձունս և 'ի ստորոտս լերանց բնակելով կամ թափառելով վրանօք, ձմերանի շատից 'ի դաշտավայրն իջանելով, սակաւուց միայն յանդորրթ բնակարանս բարձանցն: — Գոն և Անսարի կամ Նուսայիրի Արաբացիք, այլ ոչ հաստատ բնակութեամբ. զի շատք գան 'ի ժամանակի հնձոց 'ի կողմանս Ադանայ, և յետ վաստակոյն դարձ առնեն յԱսորիս: — Յոյնք բնակեն 'ի քաղաքս, պարապեալք 'ի վաճառականութիւն. յոլովք 'ի նոցանէ չեն 'ի սերնդոց նախնի բնակչաց երկրին, այլ եկք 'ի Կեսարիոյ և յայլ կողմանց: — Ի սոյն սակս են ըստ պարագային Լեւանդացիք յայլ և այլ ազգաց և լեզուաց, յաճախագոյն 'ի Տարսոն և 'ի նաւահանգիստս նորին 'ի Մերսինա և Գուզանլը, որպէս և յԱղեքսանդրեակ, հաստատեալ և գունդս կամ հիւպատոս 'ի նոսին, և գործակալս 'ի պաշտպանութիւն ազգայնոցն և 'ի հաշիւ առևտրի վաճառականութեան:

Յետին եկամուտ ժողովուրդ երկրիս են Չէրքէզք, փախուցեալք աստ յամի 1864, որպէս յայլ բազում նահանգս, յետ նուաճելոյ հայրենեաց իւրեանց 'ի Ռուսաց. զառաջինն առատակարէն վարէին ըստ հայրենի սովորութեան իւրեանց, այլ ընդդիմութիւն կրեալ և պատժութեամբ սաստից ընկճեալ՝ ընտելացան մեղմացեալք, և զարդիս հաստատ բնակութիւնս ունին 'ի դաշտավայրին, զոր և մշակեն խնամով. և են իբրև հազար երդ:

Երկրորդ ազգ ըստ բազմութեան թուոյ անձանց, և առաջին իբրև բնիկք երկրին կամ հնագոյնք յետ հնագունիցն պահպանելոց և 'ի բաց բարձելոց, են մերազնեայքս Հայք, զոր 'ի լեռնականացն, որոց անծանօթագոյն է և թիւ և կենցաղ. իսկ շինականացս սերունդք և մնացորդք պայազատաց երկրին 'ի միջին դարս, և բնակարանաց զնոյն 'ի ձեռաց Բիւզանդացւոց. 'ի յետնոց ասաի՝ սակաւք 'ի մերոցս ազնուատոհմից հրաժարեալ իսկ մեծամեծացն 'ի քաղաքական տէրութիւն կողմանց կողմանց: Նուազեալք արդ 'ի նախնեացն հարստութենէ, ըստ ամենայն մասանց, սակաւ ինչ ըստ քաղաքային հրամանաց զգլխաւորութիւն ունին յերկրի սոսա 'ի մէջ տառապանացն: Որպէս ընդհանուր թիւ համարէն բնակչաց Կիլիկիոյ, այսպէս և առանձինն մերայոցս՝ ոչ է ստոյգ. միջին թիւ համարել մարթ է գրել հանդերձ վիճակաւ Հաճնոյ, Զէյ-

[1] Լէ Բօ, ԺԳ, 292:

[2] Միխայէլ Ասորի, յամի ՈԼԶ:

*Թունի և Սմանոսեան լերանց՝ զորս արտաքոյ համարեցաք ընդհանուր Կիլիկիոյ, իբրև 15,000 երդս։*

13. *Ըստ քաղաքական և աշխարհագրական այժմու վարչութեան, որպէս և խուն մի յառաջ նշանակեցաւ, թէ ոչ բոլոր՝ գրեաթէ սակաւ ինչ պակաս, հինն Կիլիկիա՝ մնացեալ յայսմ անուանէ՝ կոչի արդ* ԱՏԱՆԱ *կուսակալութիւն կամ Նահանգ (վիլայէթ)· զի յետ անչքանալոյ այլոցն՝ այս քաղաք միայն մնացեալ է շինագոյն և բարգաւաճ, և կեդրոնական դրիւքն դիւրագոյն 'ի տեսչութիւն ընդհանուր կողմանց։ Արևմտեանն մասն՝ որ է Քարուտն Կիլիկիա նախնեաց, հովիտ Կիւդնոսի կամ Սելեւկիոյ գետոյն, երբեմն ուրոյն Նահանգ էր, վերջիշեալ* ԻՉ-ԷԼԻ *կամ* ԻՉԻԼ *անուամբ, և այժմ գաւառ մի է* ԳԱՐԱՄԱՆ *Նահանգի կամ կուսակալութեան. արևմըտագոյն մասնն՝ որ 'ի հնումն 'ի Պամփիւլիոյ համարի էր, ուրոյն գաւառ է արդ այնր կուսակալութեան, և կոչի* ԱԼԱՅԷ. *և են սորա առանձնակ վիճակք,*

Ալայէ
Աք-Սէքի
Մէնողաղ
Էպրատի
Սընըր
Տուշէմպէ

ԻՉԻԼ *գաւառի վիճակք են,*

Էրմէնէկ
Գարադաշ և Արդատի
Սէլինտի
Գէլգէի Պազարճըգ
Անամուր կամ Մանմուրիէ
Կիւլնար կամ Շէլէնտրէ
Գէլգէի Գուզաղաճ
— Եօրկանն
— Քերինէ
Սէլէֆքէ (Սելևկիա)
Էֆքաֆ
Գէլգէի Ճէպէլ
Չիյնէ
Մուտ
Սարը-գավագ
Քէշլի-Քիպիղան
Սինանըը, և վերջիշեալ մետասան աշիրէթք կամ տոհմք Թուրքմանից։

*Ատանա Նահանգ 'ի հինգ գաւառս բաժանի, և են իւրաքանչիւր վիճակօք,*

Ա· ԱՏԱՆԱ

Ատանա և Գուտաղըլ
Տինտարլը քէպիր
Տինտարլը աչաղը
Սարը-չամ
Գարա-գըլլա
Գարաձալար
Սիս
Աշիրէթի Հաձիլի
Մսիս, Այաս և Գրէնտի
Գարա իսալը
Աշիրէթի Մէնէմէնճի
Գար սէքի

Բ· ՏԱՐՍՈՆ

Դարսուս
Ալվանըը
Ուլաշ
Կիւյիւքչէլի
Գուլ-քէմէր
Նէմրուն պէլքէսի
Քէսի
Քասուն կամ Քուսուն
Կիւլէկ

Գ· ԱՉԻՐ

Աջիր և Գանաց
Ճէրիտ
Թաձիրլի
Այուս
Աշիրէթի Գայալը
Փայաս
Մէն կամ Մէսն

Դ· ՊԻԼԱՆ

Պիլան և Պաղրաս կամ Դէլէք
Խաքէնտէրուն

Ե· ՄԱՐԱՇ

*Այս գաւառ արտաքոյ է Կիլիկիոյ, աւելի քան երեսուն վիճակօք և տոհմիւք վրանաբնակաց. յորոց նշանակեսցուք միայն զայնոսիկ՝ որ ըստ հասարակաց կարծեաց մերայոց՝ անանջատ համարին 'ի Կիլիկիոյ, ըստ ազգային տեսութեան. վասն որոյ և մեք բովանդակեմք 'ի տեղագրութեանս. և են,*

Զէյթուն
Հաճին
Ֆըռնուս
Եէնիճէ գալէ
Էնտէրուն
Պազարճըգ ?
Գարս Զիւլգատրիէ
Ճէպէլ Քուզան Սարըլը ։

Ըստ այսմ ցուցակի՝ յերկոսին նահանգսն Ատանայ և Գարամանի և յեօթանեսին գաւառս նոցին, յորս բովանդակեալ համարիմք զԿիլիկիա՝ յիշխանութեան Լեւոնեանց և Հեթմեանց, եօթանասուն վիճակք և տոհմք հաշուին ըստ այժմու օսմանեան քաղաքատեսութեան. այլ մեծ մասն մի 'ի սոցանէ անծանօթք են ինձ դրիւք, ոչ յաշխարհացոյցս նշանակին և ոչ 'ի գիրս ուղևորութեանց. որով և անմարթ է ըստ այսմ կարգել զտեղագրութիւնս, այն զի սա յաւէտ 'ի մերայինս սեփական պատմութիւն կրթի. վասն որոյ և ըստ այսմ 'ի դէպ համարիմ կարգել, թէպէտ և ոչ 'ի նախնեաց իսկ մերոց ունիցիմք ինչ ոճով ցուցեալ մեզ բաժինս գաւառաց և վիճակաց յերկրի աստ: — Այլ մինչ չև զմերայոցս սեփականութենէ բուռն հարեալ, պարտ և պատշաճ է ճանաչել զվաղնջուց անցս անցից քաղաքական իրաց երկրիս, զնախագունից քան զմերազնեայս բնակողացն, որպէս ապա և զյետոյ եկելոցն. որպէս զի իբրև յերկուցն միջի պարունակեալ՝ հին և նոր ազանց և ժամանակաց՝ ճըշգըրտագոյնս հանդիսասցի հայկականն կերպարան:

14. ԿԻԼԻԿԻԱ ՅԱՌԱՋ ՔԱՆ ԶՏԷՐՈՒԹԻՒՆ ՌՈՒԲԻՆԵԱՆՑ. — Յանկիւնամէջ Միջերկրական ծովու, և երկեկից իմն երկուց մեծաց ցեղապետութեանց ազգի մարդկան, Յաբեթականացն և Սեմականաց, ԿԻԼԻԿԻԱ, յետին թատըր ինքնավարութեան Հայոց, և զամ մի ևս 'ի նախնումն նուաճեալ յազգապետէ սոցին՝ 'ի Տիգրանայ Արշակունւոյ՝ յառաջ քան զգալուստ Փրկչին, հանգոյն այլոց աշխարհաց փոքուն Ասիոյ՝ ծանօթ էր 'ի վաղնջուց հետէ, ըստ պատկան դրիցն՝ ոչ միայն երկոցուն ցեղիցն, այլ և երրորդին, որ է Քամայն, մերձ գոլով և Եգիպտոսի. յայտ է թէ և ունելով ինչ առընչութիւն, թէպէտ քաղաքական թէպէտ առևտրական: Յիշատակեն որբազան գիրք Եբրայեցւոց զաշխարհս զայս. յիշեն և հնագոյն հեղինակք Հելլենաց. այլ ոչ միաբանին գիտունք 'ի ծագումն տոհմին և յանուն երկրին: Ի հոմերական քերդուածս իսկ գտանի անուն Կիլիկեցւոց, Κίλικες, այլ յօտար կողմն փոքուն Ասիոյ, այն է 'ի Միւսիա կամ 'ի սահմանս Տրովադայ, ուստի և ոմանք հատուած եկեալ ասեն այսր 'ի զօգ Միջերկրական ծովափանց. իսկ այլք՝ նախարնակ և նախակոչ տեղւոյս գրեն ըստ առասպելաց՝ զԿիլիկ կամ Կիլիքս զորդի Ագենովրի դիցազին՝ թագաւորի Փիւնիկիոյ, զեղբայրն Կադմոսի և Փիւնիկի, զորս առաքեաց հայր նոցա 'ի խնդիր քեռ իւրեանց Եւրոպայ՝ կորուսելոյ, սպառնացեալ ոչ ընդունել զնոսա 'ի հայրենիսն՝ եթէ ոչ ածցեն զխնդրեալն. և եկեալ ասեն Կիլիկի յերկիրս՝ զորմէ բանս է, իբրև վրիպեցաւ 'ի գիւտոյ քեռն՝ յԱրամազդայ յափշտակելոյ, հաստատեաց աստէն զբնակութիւն իւր, և կոչեցաւ յանուն նորին ԿԻԼԻԿԻԱ, Κιλικία, Cilicia, 'ի մերայոց յաճախ գրեալ և երկբարբառ տառիւ Կիւլիկիա, իսկ առ օտարս սակաւ ուրեք:

Փոխանակ յունահանճար ստեղծաբանութեանն՝ հաւանին արդ գիտունք զծագումն անուանդ յեբրայականէն חִלְקִית խիլքիմ, նշանակել քարինս, ըստ վիմուտ բնութեան երկրին, կամ חֵלֶק 'ի խալէկ բառէ, որ և զքար նշանակէ և զվիճակ կամ մասն աւարի. և այս ըստ ճահ գործոյ և յաճախ պարապման ժողովրդեանն, հաւաստելոյ յաւարառութիւն աւազակութեամբ և մանաւանդ հինահարութեամբ, 'ի վաղ ժամանակաց հետէ. վասն որոյ և ընդ խժդժագոյնս համարեալ էր, և յառակս էր ասել, Երրեակ կապտատարազք Կ գրով կոչեցեալք, Կապադովկացիք, Կրետացիք և Կիլիկեցիք, Καππάδοκος, Κρῆτις, Κίλικες, τρια κάππα κάκιστα. Որ զի և է, ստուգիւ 'ի դրամս կուսակալաց Պարսից առ Աքեմենեամբք՝ դրոշմի անունն յունարէն ևս ΚΙΛΙΚΙΟΝ, և 'ի հնագոյն բևեռագրեալ համարին գիտունք ընթեռնուլ Գիլաքու: Զուգաձայն և զուգանիշ եբրայականին գտանի և յոյնն Κάλιξ կամ Κάλικα. և նոյն իսկ սովորական կոչումն արևմտեան մասին երկրին՝ թարգմանութիւն է այսր կոչման, Τραχεῖα, Քարուտ: Ոմանց թուեցաւ 'ի Χάλιξ յունականէն՝ որ է գոմէշ. և զի անասունս այս մի յերևելեաց է երկրին, ծանոյց և Բարունին մեր Թովմաս, և վասն այն համարին զնշանակ Տարսոնի՝ մայրաքաղաքի աշխարհին՝ Յուլ դրոշմեալ 'ի դրամս. այն զի Յովսեպոս եբրայեցի՝ զողջոյն իսկ աշխարհն ասէ զառաջինն Տարսոն կոչեցեալ յանուն Թարշիշի որդւոյ Յաւանայ, որդւոյ Յաբեթի: Հաւանելի է առաջին վարկածն, վասն քարուտ բնութեան երկրին կոչումնն, ըստ եբրայեցւոյն. զի և ամենայն խոհականք՝ արդ սեմական ասեն զծագումն բնիկ ժողովրդեան երկրին, յետոյ խառնեցելոյ ընդ սահմանակցացն ազգաց յաբեթականաց. և չէ հեռի անունն և իմաստն նաև յայլ լեզուաց, որպէս տեսաւ 'ի յոյնդ. նա և առ Լատինս Silex կոչի գայլախազն. և զի գայլախազ հրոյ ցայտիչ է, զայս կարծեմ առասպելեալ Յունաց, եթէ Պիւռոդ կամ Հուրոդ, Pyrodes, որդի Կիլիկեայ, հան հուր 'ի գայլախազէ[1]. զրոյց թերևս յանկագոյն ևս յարմարելի մերոյ լեզուիս բառից, (հուր, հրոտ, և այլն): Իսկ ազգակցութիւն ընդ մերոցս ունել՝ անդէպ է ըստ ծագմանն, այլ ոչ և ըստ դրացութեան. քանզի Երոդոտ երկիցս և երիցս ասէ սահմանակիցս զԿիլիկեցիս և զՀայս, անջրպետ ունելով զԵփրատ գետ միայն: Այս պատմահայր Յունաց նոր իմն ևս ասէ. յառաջ քան զգալուստ Կիլիկի՝ նախարնակ ժողովրդեան երկրին կոչել Հիւպաքեանս, Ὑπαχαιοί, Hypachæi[2]: Եւ քանզի գտանին և այլ ինչ կողմանք փոքուն Ասիոյ Կիլիկիա կոչեցեալք, կամ Կիլիկեցիք յայն կողմանս, (զոր օրինակ որք 'ի Միւսիա՝ Մանդակադեան մականուանեալք, և Կիլիկեցիք առ Արգէոս լերամբ), ոմանց այլ և այլ ծագումն ունել թուեցաւ նոցին. կիսոց 'ի միոյ բնէ՝ յերկրէ աստի չուաւեղեալս, և այլոց՝ յոյժ ընդարձակ ունել երբեմն սոցա և հզօր տէրութիւն. 'ի հարաւոյ կուսէ մինչև ցՊելուսիոն Եգիպտոսի ձգեալ, յարևմտից 'ի Լիւկիա, 'ի հիւսիսոյ 'ի Կապպադովկիա, և յարևելից մինչև ցՄարս. 'ի միջի փա-

1 Ignem e silice (invenit) Pyrodes Cilicis filius. (Պլին. է. 57):

2 Օտարոտի իմն յայտոցիկ ամենայնէ առուգաբանէ Ս. Հերոնիմոս 'ի Մեկնութեան Թղթոյն Գաղատացւոց (Ա. 21). ոչ գիտեմ որպիսի փաստիւ՝ զԿիլիկիայդ նշանակել՝ ընկալեալս կամ վերացեալս, և կամ աղաղակ հեծութեան. Cilicia quippe interpretatur *assumti, sive vocatio lamentationis.*

կելով և զՀայս. չափազանցօրէն ասացուած։ Այլ այս վկայեալ է 'ի յոգունց, զի Իսաւրիա գրեաթէ անանջատ մասն համարեալ էր Քարուտն Կիլիկիոյ, գրաւելով և զծովեզերս Պամփիւլիոյ։

Թէպէտ անծանօթ է հին պատմութիւն Կիլիկիոյ՝ յառաջ քան զնուաճումն ընդ տիեզերակալ իշխանութեամբ Ասորեստանեայց, և ոչ առոյգ յառաջ քան զայն նուաճիլն յԱմազոնաց, որպէս ասացին ոմանք, այլ դիրք երկրին, ծովն՝ որ պատի զհարաւով և հաղորդէ զնա յոգունց ազգաց և աշխարհաց միջերկրեայց, և Դրունքն կամ կապանք լերանց՝ որ մուտևելք են արևելեան և արևմտեան ազանց, ինքնին վկայեն՝ զի 'ի կանխագոյն ժամանակս չէր այնպէս դժնդակ և կոպտատարազ՝ որպէս առակեցաւն յետոյ, այլ մի 'ի բարգաւաճագոյն մասանց փոքուն Ասիոյ, և՛ յերթևեկէ ազանց ընդ ցամաք, և ծովային վաճառականութեամբ իւրով, որով և նախօրինակ և մայր համարի գերագունին իսկ Տիւրոսի. առաջին ամենայն վաճառաշահ նաւահանգստից ունելով ըզՏարսոն, մինչև յանուն սորին ամենայն վաճառաբարձ նաւուց կոչիլ ըստ ոմանց՝ Նաւ Թարշըշի. և թէպէտ բազմաց՝ Թարշիշն յիշեալ յաւուրս Սողոմոնի և թագաւորաց Յուդայ՝ թուի Սպանիա, կամ ափունք Արաբիոյ և Ափրիկիոյ, այլ և նոքին իսկ ոչ ուրանան թէ և Կիլիկեանս Թարշիշ կամ Տարսոն՝ բարգաւաճէր վաճառականութեամբ 'ի ժամանակս յայնոսիկ. և յայս իսկ ձգեն ոմանք զբան Սաղմոսին (խէ, 7), « Հողմ սաստիկ փշրեսցէ զնաւս 'ի Թարսիս »։

Ոչ է յայտ ժամանակ նուաճման Կիլիկիոյ յԱսորեստանեայց, այլ թուի գէթ հազար ամաւ յառաջ քան զՔրիստոս. զի աներկբայ է Սարդանապալու՝ որ կեայր յ'Թ դարու Ն. Ք. բնակելն 'ի կողմանս Տարսոնի, որոյ և հիմնադիր ասի յոմանց, այլ յաւէտ ընդարձակիչ ասելի է և զարդարիչ. զի յառաջ իսկ քան զնա շինեալ էր Տարսոն, ըստ ոմանց յԱրգիացւոց, և ըստ այլոց՝ 'ի Պերսէոսէ, 'ի ԺԴ դարու նախ քան զՔրիստոս. հաւանագոյն է Ասորեստանւոյն այնորիկ փափկակեաց թագաւորի՝ շինելն զԱնքիալէս քաղաք ծովեզերեայ. այլ առասպել՝ կանգնել նորա միանգամայն 'ի միում աւուր զերկոսին քաղաքսն զՏարսոն և զԱնքիալէս, որպէս պատուէր ետ ասեն արձանագրել յիւրում տապանի, և թաղիլ անդ. զի ըստ այլոց՝ կամովի հրաճարակ եղև նա 'ի Նինուէ, և թերևս աճիւնն կամ ոսկրոտին փոխադրեցաւ այսր։

Սուրբ Գիրք և արտաքին պատմիչք յիշեն զաշխարհակալութիւն և զգործս յետնոց թագաւորաց Ասորեստանի 'ի Կիլիկիա, որպիսիք են Սաղմանասար, Սենեքերիմ, և Նաբուգոդոնոսոր գրոցն Յուդթայ. որոյ զօրավար Հողոփեռնէս եկն « մերձ առ լերինն 'ի ձախակողմն ՎԵՐԻՆ ԿԻԼԻԿԻԱՅ, և գնաց նա անտի ընդ լեռնակողմն. և եհար նա զՓուդ և զԼուդ. . . և հասանէր ունէր զամենայն սահմանս Կիւլիկեցւոց »[1]. յորմէ յայտ է զի էանց նա ընդ երկոսին դրունսն, ընդ Ամանոսին և ընդ Գահուց Կիւլիկիոյ, և մխեցաւ մինչև 'ի Լիւդիա։ Դարձեալ ցուցանեն բանքդ զի ըստ այլոց յազգաց նուաճելոց կամ հարկատուաց, զոր օրինակ և Հայք, բազում անգամ և Կիլիկեցիք ապստամբէին յինքնակալաց Նինուէի, որոց յաջորդեցին Մարք և Պարսք։ Ի սկզբան պայազատութեան յետնոցս ևս ինքնագլուխ էին Կիլիկեցիք առանձինն թագաւորաք, որք յաճախ յիշին անուամբ Սիւեննեսիս, Syennesis[2], որ թուի ինձ յայտարար իշխանութեան կամ պատուոյ քան յատուկ անուն մարդոյ։ Դարեհ Վշտասպեան՝ ըստ նոր սահմանադրութեան աշխարհաց 'ի նախարարութիւնս՝ չորրորդ սահմանեաց լինել զԿիլիկիա, և հարկել յարքունիս հինգ հարիւր տաղանդ արծաթոյ, և 360 երիվարս. յարշաւել նորա 'ի Յոյնս՝ զօրավարքն Դատ և Արտափեռն՝ եկեալ այսր յԱլայեան դաշտս, զօրաժողով եղեն, և 'ի Մալլոս գումարեալ նաւատորմիղ՝ վեցհարիւր եռաթիւոց, բարձին զզօրականն և զձիս, և նաւեցին 'ի Յոնիա։ Նոյնպէս յետ ամաց (484 Ն. Ք.) Քսերքսէս էառ 'ի Կիլիկեցւոց հարիւր նաւս, և գունդ մի զօրաց. այլաձև իմն էին սոցա սաղաւարտքն, և վահանք փոքունք 'ի մորթոյ արջառոց, տառատոկք ասուեայք, կրկին նիզակք և սուսեր մի։ Նշանաւոր եղեն առ Երկայնաձեռն Արտաշիսիւ՝ եղբօր նորա Կիւրոսի փոքու յապստամբութեանն՝ անցք ընդ Դրունս Կիլիկիոյ, և գալն 'ի Տարսոն, ուր թագաւոր երկրին հաւանեցաւ տալ նմա արծաթ 'ի պէտս բանակին, ապա և գունդ յօգնութիւն ապստամբաց և Յունաց՝ ընդդէմ Պարսից. այլ յետնոցս զօրացեալ՝ նուաճեցին ընդ այլս և զԿիլիկեցիս։ Նշանաւոր ևս եղեն անցք Մեծին Աղեքսանդրի ընդ նոյն Դրունս (333 Ն. Ք.), վանելով զաւկաւաձեռն գունդ պահապանաց Պարսից, և զերծուցանելն զՏարսոն 'ի հրակիզմանէ նոցին, 'ի վրէժ ապստամբութեանն Կիլիկեցւոց յարելոց 'ի Յոյնս. և առ նմին լոգանալն 'ի Կիւդնոս, և 'ի սարսուռ մահաբեր հարկանիլ 'ի ցրտութենէ ջուրցն, և ապաքինիլ. յետ այնր զծովեզերբքն պատելով խաղալ գնալն մինչև յԻսոս, և հանդիպիլն Դարեհի, ուր և աշխարհահռչակ և բաղդասահման պատերազմն, որ զինքնակալութիւն Ասիոյ փոխադրեաց 'ի Մակեդոնացին։ — Յետ մահուան Աղեքսանդրի՝ Կիլիկիա զառաջինն վիճակեցաւ մի ըստ միոջէ Փիլոտասայ, Փիլոքսենեայ և Պլիստարքոսի, զօրավարաց կողմնակալաց Անտիգոնոսի՝ միոյ 'ի գլխաւորացն. և յետ սորա պարտութեանն և մահուան՝ մարզ եղև Ասորւոց կամ Սելևկիացւոց թագաւորութեան, հաստատելոյ 'ի Նիկանովրայ Սելևկոսէ. սոքա մուծին և տարածեցին յերկիրն՝ զկրօնս և զլեզու Յունաց, և կանգնեցին քաղաքս յանուն իւրեանց, Սելևկիա, Անտիոք, Եպիփանիա, և այլն։ Առ թոռամբ Նիկանովրի՝ Անտիոքոսիւ Թէոսիւ՝ Պտղոմեանք Եգիպտացիք նուաճեցին զԿիլիկիա (245 Ն. Ք.), մինչև Մեծն Անտիոքոս թափեաց 'ի նոցանէ (233 Ն. Ք.). և ած բնակեցոյց անդ, որպէս և յայլ կողմանս փոքուն Ասիոյ, գաղթականս 'ի Հրէից. 'ի սոցա սերնդոց

1 Յուդիթ, Բ, 13-5։

2 Այսպէս կոչէ թագաւորն որ յամի 618 Ն. Ք. միջնորդ լինէր հաշտութեանն ընդ Կրիւսոս թագաւոր Լիւդիոյ և ընդ թագաւորն Մարաց։ Այսպէս կոչէ և թագաւորն որ առ Դարեհիւ, նոյն և առ Քսերքսեաւ, թէպէտ և անուանի որդի Որոմեդոնի. նոյնպէս և որ առ Կիւրոսիւ փոքու, և կին նորա կոչեցեալ Եպիաքսա (Epyaxa). ըստ ոմանց յեբրայեցի լեզու կոչումն այդ նշանակէ ազնիւ կամ մեծ իշխան։

ընծայեցաւ մեծ Առաքեալն հեթանոսաց Պօղոս։ Առ Երևեալն Անտիոքոսիւ ապստամբեալ՝ վերստին նուաճեցաւ աշխարհն. որպէս և առ Անտիոքոսիւ որդւով Դեմետրեայ, որ աստ 'ի բերդի ուրեք պաշարեալ սպան զխռովիչն Տրիփոն։ Յետ սակաւուց հզօրագունից 'ի վերայ հասեալ Հռովմայեցւոց՝ ձգեցին զձեռն իշխանութեան իւրեանց մինչև յափունս Միջերկրականի. և յամի 103 Ն. Ք. գաւառ Հռովմայ կոչեցաւ Կիլիկիա, որպէս և յետոյ 'ի Սիլլայէ յամի 92. այլ ախոյեան ընդդէմ սոցա արձանանայր Պոնտացին Միհրդատ, զօրավիգն ունելով զզօրաւորն Տիգրան, զընտրեալն յԱսորւոց 'ի թագաւոր ինքեանց, որ և արկ զձեռն իւր 'ի վերայ Կիլիկիոյ, (69 Ն. Ք.), և աւերեալ զՍոլի քաղաք ծովեզերեայ՝ խաղացոյց զբնակիչսն 'ի դաստակերտն իւր Տիգրանակերտ. այլ 'ի զբաղել նոցա 'ի մարտս ընդ Հռովմայեցւոց, գլուխ ամբարձին Կիլիկեցիք, և հինահարութեամբ 'ի ծովու՝ տագնապեցուցանէին զամենայն նաւուղս. մինչև հարկ եղև Պոմպէի Մեծի (67 Ն. Ք.) գալ 'ի վերայ նոցա 120,000 արամբք և հինգ հարիւր նաւուք, խորտակել և ցրուել զհազար նաւս նոցին, և խաղաղել զերկիրն[1]. յորում ժամանակի նորոգեալ և զքանդեալն 'ի Տիգրանայ զՍոլի՝ կոչեաց Պոմպէուպոլիս, և եթող տեղապահ զԼոնգինոս Կասսիոս։ Գաւառ Հռոմայ համարեցաւ այնուհետև Կիլիկիա, զատուցեալ 'ի Դաշտային և 'ի Քարուտ, յորս յարեցան և Իսաւրիա, Պամփիւլիա, Պիսիդիա և Լիկայոնիա. և վերակացուք նորին կոչէին փոխհիւպատք, Proconsules. որպիսիք եղեն մի ըստ միոջէ տարեկան իշխանութեամբ, Կոռնել. Լենտուլոս, Ապպ. Կլաւդիոս Փուլքեր (Գեղեցիկ), և գերագոյնն ճարտասանից Տուլլիոս Կիկերոն յամի 48-7 Ն. Ք.[2]։ Սա նուաճեալ յափանց Լատինի, 12,000 հետևակօք և երկու հազար վեց հարիւր հեծելովք, եւ 'ի Տարսոն, և խոհական ճարտարութեամբ քան քաջութեամբ՝ նուաճեաց զաւազակս Ամանոսեան լերանց, յայրեաց յաւեր դարձուցեալ զոմանս յամրոցաց նոցին, զորս և յանուանէ յիշէ, այլ արդ ամենևին անծանօթք են և անուանքն և դիրք. անտի, ասէ ինքն, գնաց 'ի Պինտենիսոս, Pindenissus, զոր համարին Սիս կամ Գարա Սիս, յերկրի Ազատ Կիլիկեցւոց, Eleuteherocilicum, զի ցայնժամ ինքնագլուխ էին բնակք կողմանցն. և երկամսեայ պաշարմամբ էառ և զայն բերդ։ — Ի ժամանակի մեծի քաղաքական մարտին Հռովմայեցւոց՝ Կիլիկեցիք զկողմն կալան ծանօթին իւրեանց Պոմպէի, վասն որոյ և Պոմպէոսեանք կոչեցան. այլ յաղթողն Կեսար էառ և 'ի նոցանէ զօրս 'ի բանակ իւր։ Յայնմ հետէ փոխապետորք, Propretores, կացին անդ կողմնակալք 'ի Հռովմայեցւոց. բայց ընդ իշխանութեամբ նոցին՝ էին Կիլիկիոյ և առանձնակ թագաւորք յԱմանոսեան կողմանս. յորոց էր յայսմ ժամանակի Տարկոնդիմոտ Ա, որում յաջորդեցին փիլոպատոր Ա, Տարկոնդիմոտ Բ, և փիլոպատոր Բ, որ մեռաւ 'ի 16 կամ 17 ամի թուականի փրկչին։ — Յերկուսն բաժանել Հռովմէական պետութեան՝ Կիլիկիա վիճակեցաւ Անտիոքոսի (41 Ն. Ք.) որ զմասն մի երկրին ետ (36 Ն. Ք.) Ամինտեայ Գաղատացւոց թագաւորի, և զմասնն պատուականագոյն՝ Կղէոպատրեայ հոմանւոյ իւրոյ, և որդւոյ իւրոյ Պտղոմեայ։ Այլ ընդ հուպ հակառակորդք Անտոնիոսի 'ի մեկնել նորա՝ մխեցան 'ի Կիլիկիա առաջնորդութեամբ Լաբիենու, զոր եհար Վենդիտիոս փոխանորդն Անտոնիոսի, որպէս յետոյ և զՀայս և զՊարթևս առաջնորդեալս 'ի Բարզափռանայ Ռշտունւոյ։ Սա դրամք և պահակօք ամրացուցեալ էր զմի յանձուկ կրճից՝ ընդ որ հարկ էր անցանել Հռովմայեցւոց. այլ յաջողեաց սոցա խորտակել և զպատուարն և զբանակն արևելեայց, յորում սպանաւ և Բարզափրան։ Միապետեալ Օգոստեայ կայսեր (30 Ն. Ք.) ընկէց 'ի թագաւորութենէ զՏարկոնդիմոտ Բ զկուսակից Անտոնիոսի, և կարգեաց փոխանակ նորա զՓիլոպատոր Բ. և զերկիրն մարզ կացոյց նախագահութեանն Ասորւոց, ընդ որով թուի մնացեալ հանդերձ առանձնակ թագաւորօքն՝ մինչև ցկայսր Վեսպասիանոս, որ եբարձ զիշխանութիւն բնկանցն, և իսպառ գաւառ հռովմայական ինքնակալութեան կարգաց զԿիլիկիա։

Յայս միջոց ժամանակի և յետոյ ևս՝ Տարսոն պայծառանայր ճարտասանից և իմաստասիրաց հրահանգօք. յորոց չէ անդէպ կարծել և նշոյլ ինչ ազդեցեալ 'ի Սօղոս, զոր փոքր մի յետոյ շնորհք Հոգւոյն Սրբոյ յարդարեցին 'ի Պօղոս։ Իսկ ըստ քաղաքական տեսութեան՝ ոչ սակաւ խլրտմունք լինէին և կագք ընդ բնիկսն և ընդ Հռովմայեցիս. և որպէս թուի (յամի 36) Կլիտեանք լեռնաբնակք ապստամբեալք ամրացան 'ի Կադրա (Cadra) և Դաւարա (Dauara) բերդս. այլ Մարկոս Տրեբելլիոս չորս հազար լեգէոնական զօրօք հասեալ յԱսորւոց՝ պաշարմամբ և սովով ընկճեաց զնոսա։ Դարձեալ ապստամբեցին նոքա յամի 52, առաջնորդութեամբ Տրոսոփորի ուրումն, և ամրացեալ յանմատոյց լերինս՝ իջանէին ստէպ յաւար և յաւեր դաշտաց և ծովեզերաց, խորտակեցին և զբանակ Հռովմայեցւոց. բայց Անտիոքոս որ յայնժամ թագաւորէր 'ի Կիլիկիա, խորամանկութեամբ կալաւ զՏրոսոփոր և 'ի մահ մատնեալ՝ դադարեցոյց զխազմն։ Ննջեցելոյ թագաւորին յաջորդեաց Պոլեմոն որ էառ 'ի կնութիւն զԲերենիկէ զքոյրին Հերովդի, այն՝ որոյ առաջի դատեցաւ Առաքեալն Պօղոս. ընկալաւ նա զհրէութիւն, այլ յանջատել կնոջն՝ դարձաւ անդրէն 'ի հեթանոսական բաջաղանս։ — Ընդ հռովմէական վարչութեամբ ոչ սակաւ ժամանակս խաղաղեցաւ Կիլիկիա. ուր յամի 117 Տրայիանոս կայսր 'ի դառնալն յարշաւանէն Հայոց և Պարթևաց՝ մեռաւ 'ի Սելինոնդ քաղաքի, վասն որոյ կոչեցաւ այն Տրայիանուպօլիս։ Յաջորդ նորին Ադրիանոս յայցելութեան իւրում 'ի գաւառս պետութեանն՝ թուի եկեալ և 'ի Կիլիկիա, զի գտանին դրամք և արձանագրութիւնք քաղաքաց քաղաքաց նուիրեալք նմա։ — Յելս կիսոյ Բ դարու (194) Սևերոս կայսր մեծաւ մարտիւ եհար խորտակեաց զբանակ հակառակորդին իւրոյ Նիգերի, սպանմամբ նորին և քսան հազար զօրականաց, 'ի մահամա-

[1] Յառաջ քան զՊոմպէոս մարտուցեալ էր ընդ հէնոս և Սերվիլիոս կոչեցեալն Իսաւրացի (Isauricus), 'ի միջոցի 78-5 ամաց Ն. Ք։

[2] Ըստ ոմանց յամի 51-50 նախ քան զԹուական Քրիստոսի՝ էին Կիկերոն 'ի կողմանսն, և զոր արարն պատմէ 'ի Թուղթս իւր։

տոյց դաշտի անդ Խոսոփ, յորում բազում բաղդամեճամարտք մղեցան յառաջն և զկնի, նա և 'ի Հայոցս, որպէս տեսցի յապայն։

Ցաղմուկս կոյսերաց Հռովմայ՝ յետ կիսոյ Գ. դարու, Շապուհ Ա. արքայ Պարսից պարապ գտեալ՝ ասպատակեաց մինչև 'ի Կիլիկիա, վարեալ գերի ոչ սակաւ. յետ նորա Ոդենաթ թագաւոր Պալմիրայ և կին նորա հռչակեալն Զենոբիա, առ վայր մի տիրեցին անուանեցին զինքեանս՝ կողմանցս. այլ Աւրելիանոս կայսր նուաճեաց և զնոսա և զերկիրն (275)։ Յետ սակաւուց Պռոբոս կայսր վանեաց 'ի Կիլիկիա զփլորիանոս, և եմուտ յաղթանակաւ 'ի Տարսոն։ — Ի յետին ամս ինքնակալութեան Դիոկղետիանու՝ գահակիցք նորա Մաքսիմինոս և Լիկինոս հակառակեալք՝ պատերազմեցան ընդ իրեարս 'ի Կիլիկիա, և յաղթող գտաւ յետինն։ — Առ սոքօք ոչ սակաւ քաջահաւատ քրիստոնեայք դատեալք 'ի կուսակալաց Կիլիկիոյ՝ ընկալան զպսակն նահատակութեան. որպիսիք են Կլաւդիոս, Աստեր և Նէոնն եղբարք՝ յամի 285, Վոնիփակիոս հազարապետ տան Ակղայեայ տիկնոջ, յ'307, Զենոբիոս եպիսկոպոս Եգէայ (Այասայ), և քոյր նորա յ'303, Տառախոս Տուլաս 'ի Զեփիւրիոնէ, և տօնեալքն նաև յեկեղեցիս Հայոց՝ Ս. Տարագոսեանք՝ յամի 307. յորում ժամանակի կողմնակալ երկրին կոչէր Տերենտ Կիլիկիարխ, Terentius Ciliciarches։ Յաւուրց անտի Առաքելոց ծաւալեալ էր քրիստոնէութիւն 'ի Կիլիկիա, և բազում եկեղեցիք հաստատեալք 'ի նմա իւրաքանչիւր եպիսկոպոսօք, որպէս զի նշանաւոր նահանգ մի եկեղեցական լինել, և ընծայել տեսուչս գիտնականս. ընդ որս և մոլորեալս ոմանս անուանիս, որպէս Դիոդորն Տարսոնացի, և հռչակեալն քան զնա աշակերտ նորին Թէոդորոս Մոպսուեստացի, թղթակից մերոց Թարգմանչաց, բայց վասն մոլորութեանն հերքեալ 'ի Ս. Սահակայ։ Այլ և անքոյթ առանձնութիւնք լերանց երկրին՝ ապաստանարանք եղեն և բոյն միանձանց. « Տեսանեմք յամենայն » տեղիս, գրէր սուրբ Լամբրոնեցին, 'ի լերինս և 'ի » ծերպս, զտաճարս աղօթից՝ յառաջնոցն լինելոյ. թէ» պէտ և մեք ոչ գտաք արժանի նոցին խաղաղութեանց » և հաստատութեամբ շինութեանն, խռովութեան և » վերջին ժամանակի գոլով ծնունդք[1]»։ Սակայն և առսովաւ և յետ այնր՝ ոչ սակաւ բարգաւաճ մենաստանք Հայոց երևեցին 'ի տեղագրութեանս։

Ի միապետել մեծին Կոստանդիանոսի և նորոգ քաղաքական օրէնս և սահմանս կարգել, Կիլիկիա յերիս նահանգս բաժանեցաւ. կոչելով, Ա. Կիլիկիա, մայրաքաղաք ունելով զՏարսոն և վարիչ հիւպատ մի, Consularis. Բ Կիլիկիա, մայրաքաղաք Անազարբա, իշխան նահապետ (Præses). Գ, Իսաւրիա կամ Կիլիկիա Քարուտ, գլխաւոր քաղաք Սելևկիա, իշխան՝ նահապետ։ Ըստ եկեղեցական վիճակագրութեան էին առաջնոյն 'ի սոցանէ հինգ թեմք եպիսկոպոսականք, երկրորդին՝ ինն, երրորդին՝ յանուն Սելևկիոյ՝ քսանևչորք։ — Քաղաքքն գլխաւորք Ազատք համարէին և կոչէին, Տարսոն՝ Libera և Immunis, Անազարբա՝ Կեսարական (Cesarea) և մայրաքաղաք (Metropolis). միւս ազատ քաղաքք էին Մոպսուեստիա, Սելևկիա, Կոռիկոս և Եգէաս. նոցին հաղորդ թուի և Սելինոն կոչեցեալն Տրայիանուպօլիս։ Առ սոքօք և յառաջնմէ իսկ դարէ՝ սահմանեալ էր կազմել գունդ մի զօրաց Կիլիկեցւոց, որ կոչէր Կիլիկեանն կոհառ, Cohors Cilicicum։ Զայս գունդ, ըստ պատմչիս մերոյ Խորենացւոյ (Գ. Ձ.), Կոստանդ կայսր՝ յանձնեաց երբեմն Մանաճհրի Ռշտունւոյ, առաքելով 'ի կողմանս Միջագետաց ընդդէմ Պարսից։ Զայսու ժամանակաւ (յամի 333) յօրինեալ է հռչակաւոր Ճանապարհագրութիւնն Երուսաղէմեան՝ 'ի Բորտիգալացւոյ կամ Պորտուացւոյ ումեմնէ. յորում՝ 'ի միջոցի Կիլիկիոյ նշանակին ներքոյ գրեալ հանգրուանքս կամ իջևանք, հռոմէական մղոնից չափով[2]։

| | |
|---|---|
| Ի Քուզայէ Chusa, ցՍագիմա մղոնք | 12 |
| անտի ցԱնտաւալ | 16 |
| Տիանա | 18 |
| Փաւստինուպօլիս | 12 |
| Կոնա կամ Կենա, Cona կամ Caena | 13 |
| Պոտանդէ, Opodando | 12 |
| Պահակն Կիլիկիոյ, Pylas | 14 |
| Մոպսուկրինէ, Mopsucrene կամ Monsverino | 12 |
| Պարգաս, Pargais կամ Pargas | 13 |
| Ատանա | 14 |
| Մամեստիա, Mansista | 18 |
| Տարդեկուիա, Tardequia | 15 |
| Կատաւոլոյ, Catavolo | 16 |
| Պայաս, Baie | 17 |
| Աղեքսանդրեակ, Alexandria Scabrosa | 16 |
| Պղատանոս, Pictanus կամ Platanus | 9 |
| Պագրաս, Pagrius | 8 |
| Անտիոք | 16 |

Կոստանդ 'ի խաղալն ընդդէմ Յուլիանու՝ հիւանդացեալ մեռաւ (361) 'ի Մոպսուկրենէ քաղաքի, մերձ 'ի Տարսոն. 'ի մեծի յայսմ քաղաքի թաղեցաւ և Յուլիանոս (363), որ կամէր 'ի նմին իսկ հաստատել զաթոռ ինքնակալութեանն։ Առ սոքօք յիշին կուսակալք Կիլիկիոյ՝ Պռոկոպիոս (348), Մաքսիմոս (358), Մեմորիոս (365)։

Ի տկարանալ զօրութեան Հռովմայեցւոց յարշաւանաց Հոնաց՝ սկսան խլրտել լեռնականք Կիլիկիոյ և Իսաւրացիք. 'ի սոցանէ էր Զենոն կայսր, որ և ընտրեաց 'ի հայրենակիցացն գունդ մի պահապան, զոր յաջորդ նորա Անաստաս 'ի բաց արձակեաց. վասն որոյ զչարեալ Իսաւրացւոց՝ զեղբայր նորին կարգեցին իւրեանց կայսր, և գումարեալ հրոս մեծ իբրև եօթնևտասն բիւրուց արանց՝ խաղացին 'ի վերայ թագաւորեալ քաղաքին Կ.Պոլսի. այլ հարեալ բեկան 'ի Գոթաց զինուորելոց Անաստասայ։ — Առ Յուստինիանոսիւ՝ Խոսրով Անուշեւան « գե» րեաց ասպատակաւ և զկողմանս Կիլիկեցւոց », որպէս ասէ Սեբէոս մեր պատմիչ. և թէպէտ Բելիսարիոս թափեաց զգրաւեալն 'ի նմանէ (543), սակայն 'ի սկիզբն Է դարու թոռն նորա Բ Խոսրով Ապրուէզն՝ վերստին աս-

1 Ի Մեկնութեան ՃԱ Սաղմոսի։

2 Հռովմէական մղոնն է 1482 Չափ (mètres)։

պատակ սփռեալ և յայս կողմանս. ուր՝ յիշէ նոյն պատմիչ մեր Սեբէոս՝ «զպատերազմն մօտ 'ի Նեղուցն մօտին » Կիւլիկիայ, (և) եհար Յոյնն զՊարսիկն 'ի ճակատուն՝ » ութ հազար արանց սպառազինաց... Ապա զօրացեալ » զօրն Պարսից՝ անցեալ կալաւ զՏարսոն քաղաք, և զամենայն բնակիչսն Կիւլիկեցւոց գաւառին »: Որոց ոչ կարացեալ զդէմ ունել զօրավարացն Յունաց, ինքնին կայսրն Հերակլ յամի 622 եկ ընդ ծով 'ի կողմանս Աղեքսանդրեկի, և հարեալ խորտակեաց զգունդն Պարսից 'ի դաշտին Կիլիկիոյ. նոյնպէս և 'ի դարձին 'ի Պարսից (625) եհար զզօրս նոցա վերստին մտեալս այսր՝ առ կամրջաւն Ատանայ, և վանեաց իսպառ:

Այլ 'ի նմին ժամանակի յառնէր նոր հակառակամարտ հզօր՝ 'ի վերայ հռոմէական ինքնակալութեան, և կորզէր մի առ մի զասիական գաւառս նորին, յորոց ընդ առաջինսն զԿիլիկիա նուաճեցին Արաբացիք[1]. և թէպէտ բազում անգամ ընդ դարս երկուս վիճեցան 'ի վերայ երկրին՝ երկոքին մեծամեծ պետութիւնքն, այլ ոչ յաջողեցան Յոյնք ընդ երկար յապահովել զԿիլիկիա 'ի Սառակինոսաց անտի. սոքա 'ի սկիզբն Թ դարու ապաստակ մեծ սփռեցին այսր, և ամիրապետն Էլ Մամուն նուաճեաց հնգետասան քաղաքս (829), և ինքն անդ մեռաւ 'ի սառնահար ջրոց Կիւդնոսի արբեալ չափ, յետ ուտելոյ արմաւ անյագաբար: Ոտնակոխ արար և եղբայր նորա Մուտասսիմ զսահմանս Կիլիկիոյ, 'ի դիմելն 'ի վերայ Ամորիոն քաղաքի Փռիւգիոյ՝ ընդդէմ կայսեր Թէոփիլոսի, և էած երեք բիւր գերի 'ի Տարսոն. յայնմ հետէ միայն սա հանդերձ նահանգօքն անհակառակ 'ի ձեռս Արաբացւոց, բաց 'ի սակաւուց նուաճմանէն ձեռամբ Վասիլ Ա կայսեր յերրորդ քառորդի Թ դարու, մինչ քան զկէս Ժ դարու, յորում Նիկեփոր Փոկաս և մանաւանդ Յովհ. Զմշկիկ (971) բազում ջանիւ և արիութեամբ հերքեցին զնոսա. երկար պաշարմամբ առաւ Ատանա և 200,000 ոգիք 'ի մահ և 'ի գերութիւն մատնեցան. նոյնպէս և Տարսոն պաշարեալ և սովեալ՝ լքաւ յԱրաբացւոց: Իսկ և դար մի ժամանակի անհակառակ կալան Բիւզանդացիք զԿիլիկիա, մինչ Արաբացւոց զօրութիւն հերձեալ և բաժանեալ վատթարէր, և առ փոքր փոքր յառաջ մատչէր յարևելից՝ նոր ազգ աշխարհակալ և աշխարհաւեր, Սկիւթացիքն. յորոց մեծ տոհմն Սէլճուկեանց յառաջ քան զկէս ԺԱ դարու սփռեաց զառաջին ապաստակսն 'ի Մեծ Հայս, մինչև 'ի կողմանս երկրին Արծրունեաց. և յերրորդ քառորդի դարուն՝ էառ զԱնի և զայլ քաղաքս Հայոց Մեծաց, և ապա մխեցաւ 'ի Փոքր Ասիա. առ յամի 1072 Սիւլէյման հաստատեաց զսուլտանութիւն Նիկիոյ և ապա զԻկոնիոյ, նուաճեալ և ըզմասն ինչ Կիլիկիոյ, հանդերձ Տարսոնիւ, որում տիրէին յայնժամ հայազգիքն Ապլղարիպեանք Արծրունիք՝ հրամանաւ կայսեր Բիւզանդիոնի: — Մեծամեծ յեղափոխութիւնք լինէին 'ի նմին ժամանակի. ընդ արշաւանին Թուրքաց և խլրտել Եւրոպէացւոց յազատութիւն Երուսաղեմի, վասն որոյ և Խաչակիր զօրաց բանակք, և դիմեցումն ընդ կողմն Փոքուն Ասիոյ և Կիլիկիոյ. զաղթել մերազգեացս Հայոց 'ի Կապադովկիա, և տակաւ մերձենալ և մխել 'ի սոյն յայս աշխարհ, և ունել զլեռնակողմանսն, և բանալ զդրունս նորին 'ի մուտս Խաչակրացն, և սոցա նուաճել զքաղաքս դաշտակողմանն. զրգիւ նախանձու կայսերաց Բիւզանդիոյ, և սպրդել գալ Աղեքսի Ա. Կոմնենոսի, հեռացուցանել զքաջն Տանգրի և զՊալտին, որք ընդ հակառակս միմեանց վիճէին 'ի վերայ Տարսոնի, և գրաւել զնոսին անդրէն ընդ իւրով իշխանութեամբ. յոր և յաջորդք իւր, Յովհաննէս՝ որ մեռաւն մերձ յԱնաւարզա (1143), և Մանուէլ՝ ջանացան և յաջողեցան, այլ ոչ ընդ երկար. քանզի արդէն արմատացեալ 'ի Տաւրոսական լերինս՝ տարածանէր ընդ դաշտ՝ հզօր շառաւիղ մի հայկական զարմի. որ և զդար մի ողջոյն սողոսկեալ ճգնեալ ճապկեալ, պէսպէս պատահարօք և հնարագիտութեամբք՝ 'ի մէջ երից բռնաբարող ազգաց և պետութեանց հզօրաց, Յունաց, Թուրքաց և Փռանկաց, յաջողէր յառաջ քան զկէս ԺԲ դարու՝ բոլորովին տիրանալ Կիլիկիոյ, և կոչել յիւր տոհմային անուն կամ 'ի հզօր իշխեցողացն և դաստակերտի նոցին, որպէս առաջիկայդ ցուցցէ Դրուագ:



12. Կիլիկիա նուաճեալ. (ըստ քանդակ բրձուն).

## ԴՐՈՒԱԳ (Բ)

## ՆՈՒԱՃՈՒՄՆ ԿԻԼԻԿԻՈՅ Ի ՀԱՅՈՑ ՌՈՒԲԻՆԵԱՆՑ

---

13. Յետ ունելոյ և ընլոյ Հայկազնայն երկուս մեծամեծ բաժինս զառաջակողմեան Ասիոյ, զմին՝ նախարարութեամբ և աճելութեամբ, զմիւսն՝ յաղթողական կամ վտարանդի գաղթականութեամբ, և յիւր անուն յաւերժարար կնքելոյ՝ Մեծ և Փոքր Հայք, դրդեալ յանդիմակալ յեղափոխութենէ պետութեանց և սահմանաց ազգաց հզօրագունից, ստիպեցաւ տանել ծանր ծանր գնոյ քրտանց և արեանց՝ և պատրաստել միւս ևս Հայաստան: Թողլով 'ի թիկանց զաշխարհաշարժ դղրդումն Թուրքաստանեայց անհարախ գրոհից, և յառաջոյ ունելով զպայծառագոյն տէրութիւն հինաւուրցն բիւզանդական կայսրութեան, ընդ որոց երկոցուն իշխանութեամբ նուաճեալ կայր մեծ մասն աշխարհիս և ազգիս Հայոց, մասն մի փոքրիկ՝ խառնաձայլ ինն սերնդոց Արծրու-

1 Ոմն 'ի պատմչաց մերոց վասն նորին իսկ Մահմետի օրէնսդրի՝ ասէ. «Առձեռնեաց զՏարսոն Կիլիկեցւոց, զԱտանա և զՄսիս»:

նեանց, Բագրատունեաց, Պահլաւունեաց, Վահանդեայց, Սամնեցւոց, որ դայթ 'ի գայթի դեգերէր 'ի միջոցս Գամրաց և Եփրատական նահանգաց, ընդառուցեալ 'ի հակառակութենէ երբեմն սաղնջականացն Յունաց, զորս և կամաւ կամ ակամայ գրգռեաց, հարկաւորիւր թանգուզելով տեղի տալ տարաբերիլ ընդ հարաւ արևմուից, ուր տկարագոյն զմարդկան իշխեցողաց՝ քան զբնութեան երկրին տեսանէր զընդդիմակաց դժուարութիւն. և զմահու ծիգն յաչս եդեալ, զմին՝ զինու զօրութեամբ, և զմիւսն՝ խոտամբեր արութեամբ վանէր և կոխէր. հանգոյն իմն դիւցախառն նահապետաց իւրեանց, ըստ վիպասանիցն զրուցաց, աճեղիցն այնոցիկ և երևելեաց յաղթանդամ հսկայից, և յետնորդքս նոցին կորովաձիգ արք աղեղանց՝ զրկայլինդ պարզելով զհայրենատուր լայնալիճն, աննահանջ գնացիւք դէմ եդեալ ձեղքեցին զկարկառակոյտ զապառում բարձրակոհակ և մայրահոծ պարիսպս Տաւրոսի. ընդ անտոնակուեւ կիրճս և կապանս փեղկից լերանց անծանօթից՝ ընդ որս միայն բնամուղ բռնութեան հեղեղաց բացեալ էր հունս զանխուլս, այլրդեալ հոսեցան անցին, կռուանս խնդրելով կայից. և զառաջինն՝ զօրէն տեղազերծեալ արծուեաց և անգեղաց՝ զնմանիսն տեղաթափ առնելով 'ի ծերպից և 'ի գագաթանց կիլիկեան գահաւանդակացն, հաստատէին բոյնս բերդից, ըստ օրինակի նախարնակացն այնոցիկ ազատաւուն աւագակաց աշխարհին, զորոց և զտանէին իսկ ուրեք ուրեք կիսաքանդ ապաւէնս լքեալս. և այնուքիւք ամրացուցեալ զթիկունս, ապա դէմ եդեալ ոտն առ ոտն ստորիջուք յառաջխաղացութեամբ, մխեցան կալան մի ըստ միոջէ և զդաշտակողմն և զծովակողմն աշխարհին. տինա և զրովանդակն Կիլիկիա՝ ըստ ընդարձակագոյն իմացման, և տիրեցին իբրև երկուս կամ երիս դարս. հանդէս ոչ սակաւ սխրալի ցուցեալ յանձուկն շրջափակի, և 'ի միջի խլրտման հզօրաց և հակառակող դրացեաց, յարժանալուր յիշատակ քաղաքական պատմութեան միջին դարուց, և 'ի հիացումն իմաստասէր քննողաց անցիցն անցելոց յայն և յամենայն ժամանակս։

Ո՞ առաջնորդ այսպիսւոյ խիզախ կամ յուսահատ ձեռնարկութեան, և յորմէ՞ յատուկ դրդեալ պատճառէ։ — Գիտեն քաջ ամենեքին՝ որոց և փոքու իւիք տոհմային պատմութեանս մերոյ հմտացեալք իցեն, զեղերական կատարած յետնոյ բագրատունեան թագընկալ պայազատին՝ Գագկայ, և զևս քստմնելի պատճառ նորին՝ զգործ իւր տխեղծ. և զխանձեալն յերկոցունց անտի դաւաճանութեանց՝ Հայոց և Յունաց՝ անշիջաբորբոք հուր ատելութեան և վրէժուց՝ յաւելեալ յառաջինն, որ 'ի սակս խորդաւանակ նուաճման մայրաքաղաքին Անւոյ, և ևս վաղընջուցն կրօնական տարաձայնութեանց։ Հեռաւորութիւն և խրթնութիւն վայրուց՝ ուր այս դէպք լինէին՝ 'ի կենդրոնէ կայսերական վարչութեան, և տկարութիւն տորին առ 'ի չափու ունել զընդ ձեռամբ կացեալ այլալեզուսն և այլակարծիս՝ 'ի միջոցս անդ նահանգաց Գամրաց և Լիկանդոնի, տայր համարձակութիւն գժտութեանցն և մերազնեայցս ապստամբութեան. այլ զի ոչ համօրէն Հայաստանեայք գաղթեալք 'ի նշանակեալ վայրսդ՝ համախոհ լինէին գործոց Բագրատունւոյն և յարելոցն 'ի նոյն, յայտ լինէր յետնոցս՝ եթէ ոչ կարեմք առանձինն ընդ երկար զդէմ ունել յունական բազմութեանն, անօգնականք 'ի բացակայից մնալով հոմանեաց, բայց եթէ յամուրս և 'ի խինձս լերանց ապաւինելով, կամ նեղել զախերիմն, կամ զանձինս 'ի նեղութենէ ապրեցուցանել։ Եւ յետ այլ և այլ դիպաց և առանձնակ վրէժխնդրութեանց վասն սպանմանն Գագկայ, որպէս հարկ է գուշակել, թէ և լռիցէ պատմութիւն, գլուխ ամբառնայր ոմն 'ի հաւատարմաց նորին՝ Ռուբէն անուն, և դարձուցանէր զերեսս իւր 'ի սահմանաց երկրի տէրութեան նորին՝ 'ի Ծամնդաւայ, ընդ արևմուտս հարաւոյ, յանքոյթ ինչ կողմն Փռիւգիոյ, իբրև յամի Փրկչին 1081. և լինէր նահապետ նորոյ հարստութեան Հայոց, որ և յիւր անուն ՌՈՒԲԻՆԵԱՆ հռչակեցաւ, և յետ դարու միոյ 'ի թագաւորական բարձրացաւ փառս։

Որքան աներկբայ է և պատմական՝ անձն Ռուբինի և զարմ նորա ցեղեց ազգ, և ապա խառնուրդն ընդ Հեթմեանց, պահպանութեամբ իւրական կոչմանն 'ի վերայ թագաւորեալ տոհմին՝ մինչև իսպառ, այնքան և ընդ մթութեամբ մնայ ցարդ ծագումն նորին, և օրինակ տիրապետութեանն և տեղի ստանին. քանզի այլ ընդ այլոյ զրուցեն պատմիչք սուղաբանք, մանաւանդ հեռաւորքն 'ի թատերէ գործոց նորին, 'ի համբաւուց լուեալ և խանգարեալ զստոյգն ընդ անստոյգն։ Բազումք ասեն վասն Ռուբինի՝ լինել սերտ ոք և առընչակից Բագրատունեաց և Գագկայ վերջնոյ. ոմն ասէ «'ի զօրաց Բագրատունեաց » և յազգէ նորին ». ոմն և «ազգական Գագկայ ». այլ ոմն՝ «'ի սերէ թագաւորութեանն, արեանառու մեծին » Գագկայ ». և միւս յառաջ ևս անցեալ՝ «եղբայր Գագ» կայ արքայի ». ընդ որ հաճեալ խարէական արուեստաւորաց դաշնակի միոյ կամ նրանի՝ որ պահէր 'ի թանգարանի Գրիգորուպօլսոյ, գրեալ են 'ի վերայն, «Ռու» բէն որդի Գագկայ », և այլ անյարիր և անյարմար դրոշմածս բանից[1]։ Բայց ստուգագոյն առաջնոյն ասացուածն է. զի թէ ոչ միայն 'ի զօրաց Բագրատունեաց՝ այլ և յազգէ նորին, ասէ, յաւելու անդէն, «և 'ի տանէ » և 'ի տոհմէ Արծրունեաց ». քանզի գրելով սորա առ թագաւորութեամբ Լևոնի Բ՝ որդւոյ Ա Հեթմոյ, համարձակօրէն վկայէ, թէ «Եւ մեր պսակաւորն Լևոն՝ զեր» կուցն ունի թագաժառանգ ազգաց զազգականու» թիւն[2] ». որում համաձայնի և Վահրամ Րաբունի՝ որ յարքունիս նորին թագաւորի կայր, և ոչ կարէր յայտ խոտորել 'ի ստուգութենէ կամ յաւանդութենէ. և թէպէտ մարթ է իմանալ զբանն վասն զարմին Հեթմեանց՝ որ մայրենեաւք յայնմ Արծրունի տանէ էր, – նահապետի նոցա Օշնի՝ առնլով 'ի կնութիւն զդուստր Ապլղարիպի կողմնակալին Տարսոնի, 'ի տոհմէ իշխանաց Սենեքերիմայ թագաւորին Վասպուրականի, – այլ հաւաստապան ևս գրիչք՝ Սաարնցի կոչեն զՌուբէն[3]. և իբրև զերկուց

1 « Ռուբէն որդի Գագկայ, ուրօք? եղիցի առնուլ զկլայս Կո» սիր?, կարողութեամբն Աստուծոյ. առ 'ի մերդս? թւին ՇԻԸ »։

2 Ըստ Միխայէլի Ասորւոյ « Ռուբինեանքն կոչեցեալք, որք էին » յազգէ երկուց արմատոյ ազնուական և զօռ թագաւորաց, Հայկազանց » և Սենեքերիմանց, խնամութեամբ խառնեալք ընդ միմեանս »։

3 Որպէս Մխիթար Այրիվանեցի։

եղբարց սերունդս՝ համառօտ համարին յետինք զՍանասունս և զԱրծրունիս։

Ոչ ինչ ընդհատ 'ի զարմէն զանազանին տուչութիւնք պատմչաց և 'ի տիս և 'ի սկիզբն իշխանութեան Ռուբենի։ Կիրակոս, առաջին և նշանաւոր 'ի պատմիչս յիշատակօղս իրացս, որ և բագրատազն կոչէ զՌուբէն, որպէս և Միխայէլ Ասորի, անորոշակ բանիւ չտայ իմանալ որո՞յ թագաւորի ազն. քանզի ասէ. « Որ յազգականութենէ և 'ի զօրացն Գագկայ՝ Արծրունեաց ». և 'ի պատմութեան նախընթաց գործոյն՝ երկուս Գագիկս 'ի նոյնս մուծանէ. զդէպս Մարկոսի եպիսկոպոսի և զշանն՝ ընծայելով թագաւորին Կարուց՝ Գագկայ, իսկ զպատնեալն՝ միւս Գագիկ լոկ կոչէ. և արքանեակ առնմին գտեալ յայնժամ մանուկ մի փոքրիկ (Ռուբէն), զոր և գնեալ 'ի գերութենէ Յունաց « ոմն վաճառական Հայ՝ » արար իւր փեսայ[1] ». և յետ աճելոյն և լինելոյ այր և որսորդ, ապա պատմէ զձեռնարկութիւն գործոյ սորա և զտիրանալն կողմանց Կիլիկիոյ, ուր եկեալ էր որսորդութեան աղագաւ։ Իսկ այլք ոմանք պատմիչք, ընդ որս և Այրիվանեցին, 'ի վաղուց այր կատարեալ ցուցանեն զՌուբէն, և անդստին 'ի կէս ԺԱ դարու զսկիզբն իշխանութեան նորա. « Աստ (ասէ, յամս 1045-50), տիրացան Կիլիկիոյ՝ Ռուբինեանք. զատ արար Աստուած » զրկելոցս. զի Հոռոմն երարձ զմեր թագաւորութիւնս, » իսկ Աստուած զերկիր նոցա ետ Հայոց, որ և այժմ » թագաւորեն 'ի նմա »։ Է որ կոչէ զՌուբէն լոկ մի յիշխանաց Գագկայ, և է որ նաև « մեծափառ ոմն իշխան » իշխանաց »։ Արդ եթէ գուցէ ստուգութիւն 'ի պատմածս Կիրակոսի, այլ ոք է մանուկն այն և արքանեակ միւսոյ Գագկայ, այսինքն Կարուց թագաւորին, որ զարգացեալ որսորդութեամբ և զհետ կաքաւուց կրթելով 'ի վերնակողմանս Կիլիկիոյ՝ մերձ 'ի սահմանս Բարձրբերդոյ, գիտացեալ զայն դատարկ 'ի պահապանաց, և զբերդատէրն եպիսկոպոս հրաւիրեալ 'ի ճաշ որսոյ իւրոյ, եսպան առ ետեղ, մինչ սպասաւոր իւր և դաշնակից՝ նոյն օրինակ դաւաճանութեամբ զինախեղդ արարեալ զմիակ գտեալն 'ի բերդին, պարզէր 'ի պարիսպն զնշանակ իւր, և որսորդն հաւուց տիրանայր Բարձրբերդոյ։

Բայց ես հաւանեալ եմ եթէ Ռուբէն նահապետ տերանց Սիսուանայ՝ ըստ հաւաստարմագոյն աւանդողաց՝ մերձաւոր էր Գագկայ, և յառաջ քան զմահ նորին իշխանացեալ Կոսխառայ բերդի, որոյ դիրք անծանօթ, այլ գուշակին մերձ լինել սահմանաց տէրութեան Գագկայ. զի, ասէ հաւանաբանն. « Յորժամ լուաւ զմահն » Գագկայ, յարուցեալ ամենայն զարմիւք իւրովք՝ եկն » 'ի կողմանս Փռիւգիոյ, դիմելով 'ի գեօղ մի Կոյմօզոլայ » անուն, (նոյնպէս անծանօթ առ 'ի մէնջ). և անդ բնակեալ. յորում լերին էին բնակեալ բազումք յազգէն » Հայոց. զորս զամենեսեան գնեաց առ ինքն կոչեալ՝ » Մեծն Ռուբէն, և նոքօք զօրացեալ՝ էառ զլեռնային » կողմանսն. զՀոռոմս անտի 'ի բաց մերժեալ, և զնոցա » տեղիսն առեալ. և կեցեալ ինքն բարեպաշտ կենօք՝ վերափոխեցաւ առ Քրիստոս, և թաղեցաւ 'ի սուրբ ուխտըն Կաստաղոն, թողեալ զիշխանութիւնն յիւր հարազատ որդին Կոստանդին »։ — Ըստ վերոյգրելոյդ՝ 'ի Կոսխառայ՝ ուր նախ տիրէր՝ փոխեցաւ Ռուբէն 'ի Կոլոմոզոլս, և ոչ թէ յայնժամ տիրեաց Կոսխառայ, որպէս այլք ասեն՝ իբրու թէ յետ սպանմանն Գագկայ « յինքն յարեալ զբազումս 'ի զօրացն՝ խաղացեալ գայ » և առնու զամրոցն զԿոսխառայ, յորում և դնէ իմքեան » տուն իշխանութեան, և տիրէ լեռնակողմանցն » Փռիւգիոյ[2] »։ — Արդ ըստ այսոցիկ ասոյդ՝ այլ անյայտ միան տեղիք առաջնոյ և երկրորդի բնակութեանն Ռուբենի, զորս խանձարուրս պայազատաց տոհմին իւրոյ 'ի դէպ էր կոչել. և ոչ է նորա կալեալ զԲարձրբերդ, որպէս ցուցաւ 'ի վերդ, և ոչ բնաւ տիրեալ դաշտակողման Կիլիկիոյ, որպէս կարծեցուցանէ առաւելազանց բան գրչի միոյ, այլով ամենայնիւ յոյժ խոհականի, մտերմին Ս. Լամբրոնացւոյն, որ 'ի յիշատակարանի Սաղմոսաց մեկնութեան սորին, գրէ. « Քաջ և արի իշխանն Ռուբէն, նախնին սոցա, ազգական գոլով մեծի թագաւորին Հայոց Գագկայ, դիմեաց յարեւելից, եկն 'ի սահմանս Տարսոնի 'ի Գաւհ Կիլիկեցւոց. և բացեալ ընդարձակեալ, տիրեաց կողմանցն այնոցիկ »։ — Նշանաւոր իմն են անուանք երկոցուն նահապետաց նորոյ հարստութեանս Հայոց, և անլուրք յառաջ քան զայս ժամանակ յազգի մերում, Ռուբէն կամ Ռոբէն և Հեթում։

Ժամանակագիրք զամ մահուան Ռուբինի նշանակեն 'ի 1095, այն է յետ հնգետասան ամի սպանմանն Գագկայ, յորմէ 'ի դէպ է սկսանել զՌուբինեանցն պայազատութիւն, այսինքն յամէ Տեառն 1080. անտի մինչև 'ի բոլորումն տիրել Կիլիկիոյ՝ 'ի ձեռն բարեբաղդին Լևոնի՝ բովանդակ դարու միոյ ժամանակք բոլորեցան, ընդ իշխանութեամբ ութից՝ բայց սերնդոց հնգից, որպէս է տեսանել յազգացուցակ պատկերին. և են այսոքիկ.

1080 Ռուբէն Ա.
1095 Կոստանդին Ա, որդի նորա.
1100 Թորոս Ա, որդի Կոստանդնի.
1129 Լևոն Ա, եղբայր Թորոսի, ց'1137.
1145 Թորոս Բ, որդի Լևոնի Ա.
1169 Մլեհ, եղբայր Բ Թորոսի.
1175 Ռուբէն Բ, որդի Ստեփանէի որդւոյ Ա Լևոնի.
1187 Լևոն Բ, ('ի Պարոնայս) եղբայր Բ Ռուբենի.
1199 † 1219 Նոյն Ա թագաւոր Սիսուանայ։

1 Լաւ ևս այլ ոմն հետևող Կիրակոսի կամ առաջնորդ, ըստ Մատթէի Ուռհայեցւոյ՝ զԲագրատունին ասէ սպանեալ 'ի Մանտալեանց, և յետոյ զԹագաւորեալ ազգական նորին համանուն՝ դաւաճանեալ 'ի Յունաց. և սորա սպասաւոր « պատանեակ մի փոքր »։

2 Ըստ այսմ և Հեթում պատմիչ. « Յետ որոյ (Գագկայ) Ռուբէն ազգական նորա երթեալ բնակեցաւ 'ի սահմանս Կոսխառայ. և անտի հասեալ 'ի գեւղն Կոռոմոզոլ՝ անդ վախճանեցաւ »։ Ըստ այսմ և Վահրամ հաւանեալ տողէ.

« Յորոց իշխան ոմըն պատուեալ,
Արեանառու Գագկայ եղեալ,
Ռուբէն անուն վերաձայնեալ,
ԶԿոսխառայ ամրոց կալեալ.
Յորժամ զԳագկայ մահըն լուեալ,
Իւրով զարմիւքըն յարուցեալ
Եւ 'ի Տօրոս լեառըն ելեալ,
Ի Փռիւգիայ կողմանս իջեալ.
Դիմեալ 'ի գիւղ մի կոչեցեալ
Կոռմօզօլս, և անդ բնակեալ ». և այլն։






Venezia Stab. Kirchmayr e Scozzi

Գրեաթէ ամենեցուն սոցա՝ որպէս համարիւն հարազատաց, նոյն երևի և բնութիւն և գիտումն. աննկուն, երբեմն և վայրագ պնդութիւն՝ առ 'ի թօթափել զլուծն յունական, և ոչ միայն կեալ ազատօրէն հայրենի բարուք և կրօնիւք, այլ և հարստահարելով զհարստահարիչսն, նեղել վանել զնոսա և ընդարձակել զիւրեանց սահման, ցորվայր ներեաց հակառակութիւն բնութեան երկրի կամ հզօրագոյն դրացւոյ: Այսու օրինակաւ առ փոքր փոքր երկրակալքն և ընդլայնեն զվիճակ իւրեանց՝ առաջին երեքին իշխեցողքն, 'ի բարձունս և 'ի ստորոտս լերանց. չորրորդն (Լևոն Ա.) մխեալ և 'ի դաշտ՝ զամենայն միանգամայն կորուսանէ. չիջեալ համարի առ վայր մի կայծակն հայկական ինքնիշխանութեան վառեալն 'ի Ռուբինէ. այլ վերջին քառեակք զարմի նորին ոչ միայն զկորուսեալ կայանսն վերստանան, այլ և մի ըստ միոջէ յաւելուն 'ի նոյնս՝ և զլեռնական և զդաշտական. և 'ի կէս դարու միոյ մերթ զինու և մերթ մտաց զօրութեամբ մրցեալ և մաքառեալ ընդ սահմանակիցս իւրեանց, ընդ Յոյն, ընդ Թուրք և ընդ նորեկ Փռանկ, զառաջինն՝ իսպառ 'ի բաց քեցելով կամ նուաճելով, ընդ երկրորդին պայմանակցեալ դաշամբք կամ դժուարաղրուժ լերանց պատուարօք, ընդ երրորդին՝ ընդելակցեալ խնամութեամբք և սովորութեամբք, հասանեն և տարածանին յափունս Միջերկրական ծովու. ընդ մէջ սորին և ընդ նախնի կառանին իւրեանց՝ Տաւրոսական լերանց՝ ահա բովանդակեալ նուաճի ընդ հայկական ձեռամբ համօրէն Կիլիկիա. և ոչ ևս Կիլիկիա, այլ նոր Հայաստան, կամ երկիր՝ յանուն իշխեցողի ժամանակին. որ՝ յառաջն մինչդեռ 'ի լերինս եւեթ էր իշխանութիւն նոցին, կոչէր Երկիր Լեռանց իշխեցողի, որպէս յայտնակի 'ի ստորև նշանակեսցի: — Ոչ միայն Յոյնք էին՝ երբեմն տիրողք և ապա ծառայեալք Հայոց՝ յերկրի աստ, այլ և Թուրքք և Արաբացիք, զորոց վանեալ զամբոյս՝ կամ միայն աշացուցեալ 'ի բաց հանին, այլ և Ասորիք ոչ սակաւ, ևս և Փռանկք, (այսու անուամբ իմանալով զամենայն Եւրոպէացիս խաչակրութեամբ եկեալս և երբեմն տիրացեալս քաղաքաց Կիլիկիոյ), և այլ ևս խառնիճաղանճ, ընդ որս և վայրենակ Թուրքմանիկքն, ամենեքին հնազանդեալք և հաւանեալք յաջորդաց Ռուբինի, է որ բռնութեամբ, է որ աւատական օրինօք յանձուրեան, և է որ առանձինն ինչ դաշամբ և պայմանօք:

Դժուարագոյն թերևս եղև Ռուբինեանց՝ քան զօտարսն՝ զհամազգիսն նուաճել. քանզի և յառաջ քան զինքեանս ոչ միայն կային 'ի Կիլիկիա գաղթականք Հայոց, այլ և ազնուատոհմք ըստ ձեռանէ կայսերաց՝ տեարք և կողմնակալք կարգեալք բերդից և քաղաքաց. որոց գրեաթէ դար մի ևս տևեաց յայտնի կամ գաղտնի հակառակութիւն ընդ Ռուբինեանս, մինչև առաւելեալ զօրութիւն սոցա, և հնարագիտութիւն մեծին Լևոնի և հետևողի նորին Պայլին Կոստանդնի, զուգեալ զպայազատ հզօր տոհմին (Չապել) ընդ նախնեկելոյ Հեթմեան զարմի, միատարր հաւասարեաց զիշխանութիւնն և զաշխարհ:

Մուտք այսր տոհմի (Հեթմեանց) 'ի Կիլիկիա յառաջէ քան զՌուբինի զլուխ ամբառնալն. զի տոհմապետն Օշին յամի 1071 ելեալ 'ի կողմանց Գանձակայ՝ յանուանեալ անդուոջէն Մայրեաց Ջուրք, եկն այսր եղբարբ իւրով Հալկամու, և ամենայն տամբն, մարբն և կնաւ. և եգիտ յառաջագոյն ևս քան զինքն եկեալ և Տարսոնի քաղաքապետ կարգեալ 'ի կայսերէ՝ զԱպղղարիպն Արծրունի, զորդի Հասանայ, որդւոյ Խուլ Խաչկի, միոյ յիշխանաց Վասպուրականն թագաւորի Սենեքերիմայ, ընդ որում գաղթեալ էր 'ի կողմանս Սեբաստիոյ, և եհաս յայսպիսի աւագութիւն, մինչ գրեաթէ ամենայն Կիլիկիոյ՝ որչափ ինչ թափեալ էր 'ի Թուրքաց՝ կուսակալ լինել, և էր մեծ մասն աշխարհին: Սմա խնամեցեալ Օշնի՝ յետոյ ժառանգէր և զսեփական կալուածս նորին և զմասն իշխանութեանն, որ 'ի սահմանս մայրաքաղաքին Տարսոնի, և զերկուսին ամրագոյն բերդսն՝ զՊապեռօն և զԼամբրուն, որք և առ թագաւորօք՝ գլխաւոր հանդիսացան այլոց բերդօրէից, մանաւանդ Լամբրուն, յերկարագոյն դիմակալեալ հզօրին անգամ Լևոնի, և խարանօք և դաշամբք նուաճեալ քան բռնի յարձակմամբ: Զօգ Օշնի և եղբայր նորին Հալկամ վերակացու կարգիւր ծովային սահմանաց արևմտակողմանն, ուր և յետ դարու միոյ համանուն իւր և համարիւն՝ առ թագաւորութեամբ Լևոնի՝ տիրէր ծովամուխն Անամոռի և այլոց բերդից: — Ընդ երկոցուն սոցա յիշի և Բազունի՝ իշխան այլոյ ինչ մասին լեռնակողման Կիլիկիոյ, զոր ոմանք[1] եղբայր իսկ կարծեն Օշնի և Հալկամայ, այլ ոչ վկայի այս 'ի հին յիշողացն, և ոչ յայտնի ծագումն նորա և կայան. այլ միայն ասէ Ուռհայեցին. « Իշխանքն որ կային բնակեալ 'ի Տօրոս լեառն, Կոստանդին որդին Ռուբինեայ, և երկրորդ » իշխանն Բազունի, և երրորդ իշխանն Աւշինն, սոքա » զամենայն կարիս կերակրոց առաքեն առ զօրս Ֆռանկաց », 'ի գալստեան Ա. Խաչակրաց: — Էր և այլ տոհմ մի մեծ Նաթանայէլեանն կոչեցեալ, որոյ նոյնպէս անծանօթ է մեզ ուստն և երբ գալստեանն, այլ տեղի իշխանութեանն ծանօթ՝ բերդն Ասկուռոյ և սահմանքն, ոչ հեռի 'ի Հեթմեանց: — Փոքր մի յառաջ քան զսոսա անուանի եղև 'ի Կիլիկիա և Խաչատուր զօրավար, թերևս 'ի զարմէ վերոյիշեալդ Ապլղարիպայ, իշխան Անտիոքայ Կրագեան, 'ի ծովեզերս Իսաւրիոյ կամ Քարուտն Կիլիկիոյ, ուր վաղու իսկ բնակեալ կային Հայք. և սա սովաւ՝ յամի 1069 յասպատակել Թուրքաց 'ի սահմանս Իկոնիոնի և յառաջել 'ի Կիլիկիա, Հայք դարանամուտ լեալ 'ի լերինս Սելևկիոյ՝ հարին ցրուեցին զնոսա և թափեցին զամենայն աւար նոցին: Իսկ Խաչատուր առաւել քան զքաջութիւն՝ գործ մի ազնիւ գործեաց. զի յորժամ Յոյնք անարգաբար լքին զվատաբաղդիկ տէրն իւրեանց՝ զկայսրն Դիոգենէն Ռոմանոս Դ, վասն պարտութեանն և գերութեան յԱլփասլանայ, և պատերազմաւ ևս հալածեցին 'ի կողմանս Ամասիոյ, Խաչատուր հաւատարիմ կացեալ բարերարին՝ գումարեաց որչափ ինչ ձեռնհաս եղև զօրս, զերծոյց զկայսրն 'ի մօտալուտ վտանգէ, քաջալերեալ էած եբեր յամուրս պահակին Կիլիկիոյ, և զօրացուցեալ զձեռն նորա մարտկօք և արծաթով բաւա-

1 Այսպէս աւանդէ Նոր պատմահայր մեր Չամչեան, այլ ոչ գիտեմ 'ի հին յիշատակաց ուստեք՝ եթէ հաւանական կարծեօք:

կան եւ կալ միաանգամ ընդդէմ Թշնամեաց (1071). Թողեալ զնա յԱտանա, ինքնին ել ընդդէմ բիւզանդական բանակին 'ի սահմանս Կապանին. այլ զի յանկարծոյն 'ի վերայ հասին նմա Թշնամիք, յառաջամարտ ունելով զկորովի բաղդախնդրակ փռանկն Ռոպերդ (Crepin), հարան վանեցան զօրք իւր, և ինքն անկեալ յերիվարէն գերի վարեցաւ, և կապեալ ածաւ առաջի Անդրոնիկոսի որդւոյ բանակալ կայսերն և առաջնորդի բանակին. և իբրև մեծարանօք ընկալեալ եղև 'ի նմանէ և զգեցուցաւ, միւս ևս ազնիւ գործեաց. ծանոյց զի 'ի փախըստեանն Թաքուցեալ էր յանտառին ակն մի գոհար յոյժ չքնաղ, և առեալ պահապանս գնաց եհան եբեր մատոյց Անդրոնիկեայ. որոյ զարմացեալ ընդ գործն և ընդ գոհարն՝ ընծայեաց զայն Մարեմայ դշխոյի: — Թողում յիշել զՀայկազուն իշխանսն որք 'ի մերձաւոր սահմանս Կիլիկիոյ տիրապետէին. որպէս հաչակաւորն 'ի նոսա և մեծազօր Գողն Վասիլ, ժպիրհն Փիլարտոս, և տեարք բերդորէից և քաղաքաց Եփրատացւոց գաւառացն. Բագրատ չաղակրատ՝ Թերևս Բագրատունի, որ առաջնորդ եղև երբեմն Խաչակրաց. Սիմէոն որոյ տեղի իշխանութեան 'ի հիւսիսակողմն Կիլիկիոյ էր. Ճնձղուկ, քաղաքապետ Լաւոդիկիոյ, և այլք: — Բայց Հայք դարու միով ևս յառաջ ոչ միայն բնակեալ՝ այլ և բաւական բազմաթիւք էին 'ի կողմանս Կիլիկիոյ, մինչև Խաչկայ կաթողիկոսի Ա. (970-990) կարգել նոցա եպիսկոպոսս 'ի Տարսոն և 'ի Սելևկիոն և յԱնտիոք, « և յամենայն » գաւառսն յայնոսիկ », որպէս ասէ Ասողիկն: Եւ թէ ստոյգ իցէ նշանակեալն յԱյրիվանեցի ժամանակագրէն՝ 'ի սկիզբն իսկ Ժ դարուս (յամս 900-910) « Արք յիսուն » իշխանք Սասնցի՝ նեղեալ 'ի Թուրքաց՝ գնացին 'ի Կի» լիկիա, և Աստուծով տիրեցին սակաւ սակաւ »: — Թէ արդեօք կային միայն և սերունդք Հայկազանց՝ որք ընդ Արշակունեաւն Տիգրանայ կալան զԿիլիկիա մինչև 'ի Փիւնիկէ, ոչ է մարթ հաստատել, և ոչ ժխտել 'ի սպառ: — Այլ ժամ է մեզ դառնալ 'ի զարմն և 'ի յաջորդս Ռուբինի, և դիտել զյառաջխաղացութիւն նոցին յաշխարհակալութիւն Կիլիկիոյ:

Սակաւատև քան զինուց 'ի զարմին՝ եղև ժամանակ իշխանութեան Կոստանդնի Ա., որդւոյ Ռուբինի, եթէ ստոյգ իցէ աւանդեալն 'ի մերայոց զնմանէ [1]. բայց կարի մեծանշան և սակաւն այն. նախ վասն հաստատելոյ նորա զաթոռ իշխանութեանն 'ի Վահկա, ուր և մնացին աւելի քան զեօթանասուն ամ, մինչև 'ի փոխադրելն 'ի Սիս. երկրորդ, վասն գալստեան Խաչակրաց 'ի սահմանս իւր և ծանօթանալոյ ընդ նոսին, յորմէ և սկիզբն ընտանութեան մերազգեացս և խնամութեան ընդ արևմտեայս: Մարթ է զսա կոչել առաջին երկրակալ 'ի Կիլիկիա, զի հայր նորա Ռուբէն՝ արտաքոյ բնիկն Կիլիկիոյ տիրացեալ էր. իսկ սա՝ ըստ պատմչաց՝ « Եկեալ 'ի լեառն Տաւրոս, » քաջութեամբ և արիութեամբ բռնակալեալ ունէր ըզ» մեծ մասն լերինն Տաւրոսի, և տիրեալ բազում բերդից » և գաւառաց՝ զոր յափշտակեալն էր յազգէն Մոլիմա» նաց ». և որպէս յաւելու ռամկաբար գրողն, « ու չաք » մի (երկիր) 'ի Հոռմէն, մեծ մասն աշխարհիս Կիլիկիոյ. » որ էր առաջին բերդ (որում տիրեաց) Վահկայն, 'ի » Թուին Հայոց ՇԽԷ » (1098). և զի չէր գործ դիւրին պաշարմամբ կամ յարձակմամբ առնուլ զայնպիսի ամուր վայր, (որպէս տեսցի 'ի տեղագրին), խաբէութեամբ կորզեաց, ըստ անխիղճ սովորութեան ժամանակին, և մանաւանդ անհաշտ ատելութեանն ընդ Յոյնս. Թէպէտ և քան զբազումս յիշխողաց խոհական և զգօն գտաւ Կոստանդին. և իրաւամբք Մեծ կոչիւր 'ի միջի այն ժամու տերանց Հայոց. և ըստ արժանւոյն մեծարիւր յիշխանացն արևմտեայց Խաչազգեստից, զորս և հրաւիրեաց գալ անցանել ընդ սահմանս երկրի իւրոյ, ցուցանելով զճանապարհն և կերակրելով զօրեալ բանակն, որպէս սրարին և Օշին և Բազունի և վանորայք Սևաւ լերին. վասն որոյ և արևմտեայք ընծայեցին նմա պատիւ կոմսութեան և մարկիսութեան ևս, ըստ աւանդելոյ Վահրամայ [2]. մանաւանդ զի և փեսայացոյց նա 'ի դուստր իւր զմի յառաջաւոր իշխանացն այնոցիկ՝ զՃոսլէն, որ Եդեսիոյ կարգեցաւ կոմս: Ըստ նմին օրինակի և եղբայր իւր Թորոս [3], որ և զոյգ նմին կալեալ ունէր բերդս ամուրս 'ի լեռնակողմանն, ետ զդուստր իւր Արտա 'ի կնութիւն Պաղտինի՝ եղբօր առաջնորդի խաչազգեստ բանակին (Կոտֆրետոսի), խոստանալով պաշտօնական նմին 60,000 դահեկան ոսկի [4], և առժամայն վճարել 17,000. յաջորդեաց նա 'ի տէրութեան Երուսաղէմի և առաջին Թագաւոր գոլով առաջին Թագուհի լինէր լեռնաստուն բամբիշն Հայոց. զոր թէպէտ անօրինաբար եթող Պաղտին յետ ամաց ինչ, այլ յերկեղէ մահուան զգաստացեալ՝ ժողովեաց վերստին, 'ի բաց զեկամուտն արձակելով հոմանի: Այսպէս անդէն 'ի սկզբան մտից արևմտեայց յարևելս և ծանօթանալոյ ընդ մերոցս, սկիզբն արարին և խնամութեան, զգեղանի օրիորդս Հայկազանց պատուաստելով յեռանդուն ապետս Եւրոպիոյ. ապա և Հայք 'ի Թագաւորութիւն հասեալ՝ հրաւիրեցին զծիրանածին դստերս նոցին յինքեանց հարսնութիւն [5]: Եւ ընդ խառ-

[1] Չի են որք յամի 1076 դնեն զսկիզբն իշխանութեան սորա, որ հանդիպի առ կենդանեաւ իսկ Գագկայ, և անյարմար է բնաւին. բայց և Սմբատ 'ի ժամանակագրութեանն չորեքտասան ամ դնէ իշխանութեան Կոստանդեայ. որով սկիզբն լինի իբր յամի 1087, և Ռուբենի իշխանութիւնն համառօտ, թէ համարիցիմք սկսեալ 'ի մահուանէն Գագկայ յամի 1080:

[2] « Սա 'ի Ֆռանգաց ազգէն պատուեալ,
Որոց եղև նիզակակցեալ,
Ընդդէմ Թուրքին պատերազմեալ.
Սեմ կոմսութեան պատիւ շնորհեալ,
Գունս և մարգիզ վերաձայնեալ »:

[3] Մերձաժամանակ պատմիչք Խաչակրաց զանուն Թորոսի յաճախ ծեքեալ գրեն Tafrus, այլ և Taforch.

[4] Զմնացեալ մեծ մասնն յապաղէր, ասեն, հատուցանել. առ այս յաւելու ոմն 'ի պատմչաց Լատինաց, եթէ պայման եդեալ էր Թորոսի առ Պաղտին՝ աճեցուցանել զմօրուսն. և նորա արարեալ այնպէս, յետ ամի կամելով կորզել ինչ յաներոյն, առաքեաց ծանուցանել՝ որպէս թէ ընդ պարտեօք անկեալ է և ստիպի գերծուլ զմօրուսն. փութացաւ Թորոս գրել և աղաչել զի մի արասցէ երբէք այնպիսի նախատինս դստեր իւրոյ, և վաղվաղակի առաքեաց 35,000 բիզանդ ոսկի: — Յակոբ Վիտրիակ. Հդ:

[5] Ի սմին ժամանակի և Գաբրիէլ Հայ քաղաքապետ Մելիտինեայ՝ ետ միւսոյ Պաղտինի (Baudouin de Bourg) նախ կոմսի Եդեսիոյ և ապա նոյնպէս Թագաւորի Երուսաղէմի, զդուստր իւր Մարփիլ կամ Մորֆիա, յորմէ ծնաւ միայն դստերս չորս. անդրանիկն Մելիսինտա տուաւ 'ի կնութիւն Ֆուկայ կոմսի Անժու, որ յաջորդեաց

*'ի վայր վազեալ Թորոս 'ի բարձանց լերանցն' 'ի դիմի հարեալ էր կայսերական գնդից, նախ (1101), որպէս Թուի, նիզակակցեալ արիականին Տանգրեդեայ' որ կալեալ ունէր զքաղաքս աշխարհին, և ապա (1103) 'ի դերև եհան զջանս Բուտումիտի զօրավարի առաքելոյ յԱլեքսեայ Կոմնենեայ, որոյ ոչ կարացեալ ստանանել լեռնականացն' գնաց նուաճեաց զՄարաշ. այլ յետ ամի (1104) յառնուլ Բրնձին Անտիոքայ և Ջօսլինի զքաղաքն [1] զայն, գնեաց Թորոս ընդ բազում ոսկւոյ 'ի քաղաքապետէն' որ իշխանաց իշխան կոչիւր, զմեծայարգի պատկեր մի Սրբոյ Աստուածածնի, զպատուեալն անդանօր: Հարկ է թէ որիշ 'ի սմանէ էր այլ պատկեր Տիրամօր' զոր եբարձ Թորոս ընդ գանձուցն 'ի բերդէն Մանտալեանց, և հանգոյց որպէս յաղթանակ և պահպանակ տան և աթոռոյ իւրոյ' յընդարձակագոյն ևս յաղթանակի, յԱնազարբա քաղաքի' երկրորդի ամենայն քաղաքացն Կիլիկիոյ, զոր' յետ յապահովելոյ զլեռնակողմանսն' իջեալ անտուստ 'ի դաշտաբերանն' իբրև 'ի նախադրունս նորուն, յափշտակեալ էր 'ի Յունաց, ոչ պատմի որով օրինակաւ. և «ըզ-*
*» պատկեր Տիրամօրն եդ 'ի դղեակն Անազարբայ...*
*» յորում և շինեաց զհոյակապ տաճարն, և եդ անդ*
*» զպատկերն, այսպէս և գրեալ է յարձանի' 'ի շինուածս*
*» տաճարին». որպէս աւանդէ պատմիչն. բայց արդ աւերակք են տեղիքն և մասն արձանին միայն մնայ: Եւ այս յիշատակք լիցին 'ի վկայութիւն բարուց սորին և իւրայոցն. աճարկուք առ օտարս, աճարեկք առաջի Տեառըն. այլ սա միանգամայն և զարութեան և զօրութեան իմաստս 'ի մի ձուլեաց աստանօր, յանուն Զօրավարաց նուիրելով զեկեղեցին զայն: Հաւաստի բարեպաշտութեան և զգօնութեան Թորոսի' դրուատի քան զյոլովից յիշխանակացն. զի վկայի «այլ և բազում եկեղեցիս և ժողո-*
*» վարանս միանձանց շինեալ, և առատատուր պարգևօք*
*» կարգաւորեալ ճոխացոյց, միանգամայն և հիւրանոցս*
*» բազումս, և ամենայն ազգաց քրիստոնէից' տեղի և*
*» տուն պատրաստեալ, յարգեցաւ բարձրացաւ և հռչա-*
*» կեցաւ յամենայն լեզուս. որք զԿիլիկիա անուն կքեալ'*
*» Թորոսի երկիր զաշխարհն նորին վերաձայնէին»: Մի 'ի վանորէից դաստակերտաց նորին է Մաշկևոր, և միւս գերադրականն համօրէն մենաստանաց Կիլիկիոյ' Դրազարկ, ուր հուպ զկնի կարգաւորողի տեղւոյն' Մեղրկայ վարդապետի' թաղեցաւ և ինքն. և զհետ իւր յոլովք 'ի փառազանց և յարքայազանց: Այսպէս սա առաջին հիմնեաց և զգահ և զտապան տերանց տանն Սիսուանայ, որ և աճա յիւր անուն կոչեցաւ 'ի գլխոնց, իսկ յանգիտնոցն կոչէր Երկիր իշխանին յերանց. և Թառունք իսկ Նորին, որոց կայկայեալ էր այնուհետև 'ի քաղաքս դաշտին, տակաւին Լեռնականք կամ Տեարք լերանց կոչէին: Ջայնօրիկ յինարան ունելով Թորոսի' Նորականոյց զահուն' Անազարբայ, չատ համարէր զշուրջ սահմանսն յիւր կալուած. իւրանման քաջի և խոհականի Տանգրեայ թողեալ զգօրիլն ընդ կայսերականաց և կորզել զՏարսոն և զայլ քաղաքանին, մի ըստ միոջէ վանեալ զզօրավարս նոցին, ընդ որս և զԱրշակունի ոմն Ասպետ, որոյ բազում գործս արութեան ցուցեալ էր ընդ Աղեքսի 'ի պատերազմունս ընդդէմ Նորմանին Ռոպերդի Կիշարայ (Կիսգարտ) 'ի կողմանս Իտալիոյ և Յունաց. իսկ այժմ ստիպեցաւ Աղեքս թողուլ դաշամբք 'ի Բրինձն Անտիոքայ' զարևելեան մասն Կիլիկիոյ, զՍեաւ լերինս և զառ ստորոտովն. ուր և յայտնակի ասի 'ի դաշնագրին,*
*« Բաց յերկրէն զոր ունէին իշխանքն Հայոց' երկոքին եղ-*
*» բարքն, Թորոս և Լևոն» [2]. յորմէ գուշակի հաշտ և հաւան լինել կայսերն ընդ Թառունս Ռուբինի, որպէս ընդ Հեթմեանսն և ընդ Ասկուռսեանս, և վասն այնորիկ շնորհեալ զնախասեբաստական պատիւն, մանաւանդ չև խնդրեալ նորա զվրէժ Գագկայ: Կարևոր իսկ էր Թորոսի յայնժամ յանկուցանել զկայսր. քանզի հրոս Թուրքաց և Պարսից առ կռան կայր. որք և երկիցս և երիցս ասպատակեցին 'ի սահմանս Անազարբայ, նախ յամի 1107, անցեալք ընդ կապանս ինչ Տօրոսի. այլ 'ի դիմելն և յերկիր կալուածոց Գող Վասլի' չարաչար հարան 'ի սմանէ, հաւանօրէն և Թորոսի հետամուտ գոլով նոցա. յետ սակաւ ամաց (1110) մեծագունդ ևս բազմութեամբ մխեցան Թուրքք և Պարսք յաշխարհն Անաւարզայ, յաւար և յաւեր. յորոց բազմութենէ ակն ածեալ Թորոսի' ոչ համարձակեցաւ ելանել 'ի պատերազմ. և դարձան ասպատակքն աւարաւն յերկիր իւրեանց: Յետ երից ամաց (1113) միւսանգամ ասպատակեցին Թուրքք 'ի սահմանս տէրութեան Ռուբինեանց, յորոց և անկան 'ի մարտին «երկու իշխանքն մեծք' Տիգրան և Ապլասար.. որք*
*» էին 'ի զօրաց (Գող) Վասլին». բայց ոչ յիշի գործակցութիւն Թորոսի յայս դէպս: Ի միւս ևս ամին (1114) եղև մեծ սասանութիւն երկրի 'ի հիւսիսային և յարևելեան սահմանս Կիլիկիոյ. յաւերակացն միջի' ասա զաւաջինն 'ի յայտ գայ կիսաքանդ դիմօք' Սիս, որ ընդ հուպ լինելոց էր մայր քաղաքաց և գահ իշխանութեան Ռուբինեանց: — Յետ այսորիկ յիշատակի գործ մի Թորոսի' զորոյ արժան էր գիտել զպատճառն' առ 'ի դատել արդարապէս. այս ինքն է, զի 'ի գալ Տղայ Վասլին որդւոյ*

*տուն գանձուց ձերոց: Եւ նոքա յամառեալ ոչ ցուցանէին. և սկսան չարչարել զնոսա. և միւսն ընկէց զինքն վերուստ 'ի վայր և մեռաւ. և սկսաւ զաւագ եղբայրն չարչարել. և նա լըրաբեր առնէր ընդ Թորոս. Դու հայ մարդ ես, և մեք Հոռոմ իշխանք, զինչ ունիս տալ պատասխանի թագաւորին մերոյ: Եւ յայնժամ 'ի բարկութիւն շարժեալ Թորոս ասէ. Եւ դուք որ զայր հզօր և զօծեալ թագաւոր' որ առ ձեզ 'ի համբոյր խոնարհեցաւ' որպէս հայր յորդի և սիրեաց զձեզ' Գագիկ. սպանիք զնա, զինչ պատասխանի ունիք տալ ազգիս Հայոց: Եւ 'ի տեղէն յարեաւ, և էառ գաւազան կռանի, յարձակեցաւ 'ի վերայ նորա, և լալախառն սկսաւ ուժգին հարկանել, մինչև անդէն սատակեցաւ: Եւ յայնժամ Թորոս գոհութիւն մատուցանէր Աստուծոյ, որ արժանի արար զինքն առնուլ զվրէժ արեան անմեղին Գագկայ 'ի ննջաւորացն յայնցանէ: Եւ հայր հօր նորա' Ռուբէն, յիշխանացն Գագկայ թագաւորի էր. ապա առեալ բազում գանձս ոսկւոյ և արծաթոյ և զամենայն ինչս նոցա, և զմիւս եղբայրն բերեալ 'ի Վահկայն, և եդ պահապան բերդին»:*

1 Ըստ Մատթէի Ուռհ. յամի 1100 Թաթուլ ոմն էր 'ի դրանէ կայսեր իշխանաց իշխան, այր քաջ, և արութեամբ 'ի բաց վանեաց զՊեմունդ' որ եկեալ էր առնուլ զքաղաքն: Բիւզանդացի պատմիչքն յամի 1103 Բուտումիտեայ նուաճեալ զքաղաքն և յանձնեալ 'ի Մոնաստրաս զօրավար. յորմէ 'ի դէպ է համարել 'ի միջոցի երկուց թուականացդ, (1100-1103) անկեալ զքաղաքն Մարաշ 'ի ձեռս փռանկաց. իսկ 'ի միւսանգամ տիրանալ սոցին' ոչ յիշի յատուկ անուն քաղաքապետին յՈւռհայեցւոյ մերոյ, այլ միայն իշխանաց իշխան կոչէ և աստ:

2 Աննա Կոմնենա, յորմէ Լը Պօ, ժե. 419:

Գողոյն՝ առ եղբայր իւր Լեւոն և յանձնել 'ի կնութիւն զդուստր նորա, կալաւ զնա Թորոս և ետ 'ի ձեռս Պաղտինի կոմսին Ուռհայի, որ բազում անգամ յարձակեալ էր 'ի վերայ Ռուպանեայ և այլոց կալուածոց իշխանին, և 'ի բաց վաճառել 'ի նմանէ. իսկ այժմիկ գրաւեաց զամենայն երկիր նորա և ունայնաձեռն 'ի բաց արձակեաց զերիտասարդն կորովի. որոյ կացեալ սակաւ մի առ անուրս իւրոյ Լեւոնի, ապա գնաց 'ի Կ. Պօլիս։ Այլ և ինքն Թորոս 'ի միւսում ամի (1117) ժողովեաց առ ինքն զԱպըլղարիպ իշխան Պիր քաղաքի՝ զորդի Վասակայ Պահլաւունւոյ, որ նոյնպէս նեղեալ 'ի Պաղտինեայ՝ թողեալ էր 'ի նա զքաղաքն և զամենայն գաւառ նորին [1]. ըստ այսմ օրինակի արար աղաւ բռնաւորն այն Պաղտին և ընդ իշխանս Հայոց հովտին Եփրատայ, մի առ մի քակեալ զնոսա, որպէս ողբայ Ուռհայեցին, « բարեաց ամենայն երախտեաց մոռացօղս » կոչելով զնա և զազգ նորին։ Բայց տունն Ռուբինեանց միայր և բարձրանայր շրջահայեաց զգուշութեամբ Թորոսի. որում ոչ այնքան հեռաւոր եղև եղբայր նորա կրսեր և յաջորդ՝ Լեւոն, որքան թափոյ մտացն և բազկաց իւրոց. զի որդին և ժառանգն Թորոսի՝ Կոստանդին անուն՝ դաւաճանեալ էր յամպարշտաց ոմանց մահացու դեղով, այլ որպէս և երբ՝ ոչ պատմի։

Այս Լեւոն առ կենդանեաւ իսկ եղբօրն՝ տիրէր մասին միոյ երկրին, որպէս կարծեմ՝ արևելակողմանն, ընդ մէջ կալուածոց տերանցն Մարաշոյ և Անտիոքայ, ոչ սակաւ գործս արութեան ցուցեալ 'ի պատերազմունս որ 'ի չահ իւր կամ նիզակակցաց Փռանկաց. որպէս յամի 1112 օգնական եղեալ Ռոճերի պայլին Անտիոքայ՝ 'ի խաղալ նորա յԱզազ քաղաք՝ 'ի վերայ ամիրային Հալպայ, իբրև զաւուրս երեսուն ոչ կարէին վանել զզօրսն, ինքեան յանձնեցաւ հայկական գնդաւն բաղխել ընդ նոսա. և յաջողեաց վանել սրկանել զոստխան 'ի քաղաքն, և արգելուլ զելս նոցին. յետ որոյ պնդեալ զպաշարումն պայմանաւ անձնատուր արարին զԹշնամիսն, և Լեւոնի եղեն փառք ստացմանն [2].

« Ընդ որ եղեն յոյժ զարմացեալ
Արիական ազգըն՝ տեսեալ.
Իսկ այլազգիքըն զարհուրեալ
Նոր Աժդահակ ըղնա ձայնեալ [3] »։

Իսկ 'ի միապետելն յիշխանութեանն՝ ըստ անուան իւրոյ՝ սաեն յոյն պատմիչք, իբրև առիւծ ամեհի ելեալ 'ի մորեաց՝ յարձակէր յընդարձակ դաշտագետինն Կիլիկիոյ. յայլ և յաշեակ հարկանէր՝ ըստ բերման խանդիցն կամ դիպաց, զԹուրք և զՓռանկ և զՀոռոմ, կորզելով զկալուածս նոցին, և ինքն 'ի նոցունց հարեալ լինէր, և ապա յիւր հայրենատուր ժառանգութենէն կապտեալ։ Զառաջինն, ըստ վերոյգրելոցս հաշտ և կամակ երևի եղեալ Յունաց, մինչև յամի 1131 Սահակայ եղբօր կայսեր Աղեքսի առնուլ զդուստր նորա 'ի կնութիւն [4], յաժիտ համարելով զՄսիս և զԱտանա. այլ յետոյ խռովեալ Սահակայ՝ մեկնեալ գնաց առ Մազուտ սուլտան։ Յայնժամ և Լեւոն 'ի վերայ յունականացն յարձակեալ՝ էառ զՄամեստիա և զմեծն Տարսոն, որով եհաս գոգջիր յափունս Միջերկրականի. ապա, ըստ ոմանց ասելոյ, գժտեալ ընդ երիտասարդ Բրնձին Անտիոքայ Բ Պեմունդի՝ միաբանեցաւ ընդ Զանկի գոռ ամիրայն Հալպայ, եհար խորտակեաց զզօրս նորա, յորում խռան մարտին սպանեալ և կառափնատեալ բարձաւ ինքն իսկ Բրինձն այն։ Յետ այնր կամ յառաջագոյն՝ յարձակեալ երևի Լեւոնի 'ի բաժինս Թուրքաց ընդ հիւսիսի. որոյ փոխան և հզօր Դանիշմէնտն Էլ Ղազի Բ (1131) արշաւեաց 'ի Լեւոնին. փութացեալ սորա եւ ընդ առաջ և յետս դարձոյց զԹուրքն, խոստմամբ պատկառ կալոյ սահմանացն. այլ յետ այնր դարձեալ առ ոտն կոխէր զնոյնս. և ապա՝ որպէս թուի՝ դառնայր անդրէն նուաճել զմնացեալ կալուածս Յունաց, կամ զբերդս, զոր ոչ էր դիւրին փութով զրաւմ ածել։ Իսկ յամի 1136 յաջողեցաւ գողանալ 'ի Փռանկաց անտի զանուանի դղեակն Սարուանդիքար. յորմէ բորբոքեցաւ կրկին ցասումն տերութեան նոցա ընդ Լեւոն. միաբանեցին Անտիոքացիք ընդ Թագաւորին Երուսաղեմի ընդդէմ նորա. իսկ սա նիզակակից ինքեան արարեալ զքեռորդին իւր Ճոսլին Բ զկոմսն Եդեսիոյ, գոռք գոռից պատահեցին և խռովեցին զխաղաղութիւն քրիստոնէից, աւերմամբ գաւառաց և երկուստեք անհամար զերութեամբ։ Այն ինչ դադարեալ սոցա 'ի խազմէ, ահա (1136) գրգռեցաւ կռիւն ընդ Լեւոն և ընդ Պաղտին տէրն Մարաշոյ. և ոչ գիտեմ ո՛ եղև յաղթական. զի արքունական պատմիչս մեր և Ասորի որ յիշեն զդէպքս, մին Պաղտինի ասէ խանգարեալ զԼեւոն, միւսն՝ Լեւոնի զՊաղտին. թերևս յանգգուշութենէ ընդօրինակողաց գրոցն. այլ յայտ է՝ զի թէ և պարտեալ իցէ Լեւոն՝ ազատ էր և յուժի. զի յետ երից ևեթ ամսոյ՝ խաբէութեամբ իւիք որսացեալ եղև 'ի Բրնձէն Անտիոքայ աճեղն այն առիւծ,

1 Ոչ միայն զազգայինսն, այլ և զօտարս ազատեւմեալս առ ինքն պաշտպանէր Թորոս. զոր օրինակ սաի վասն Պալակայ, որպէս Թուի Հալպայ հզօր իշխանին, որոյ վանեալ 'ի Մասուտոյ սուլտանէ իկոնիոնի՝ անկեալ էր առ Թորոս։ — Աբուլֆարաճ. Թուի յետ 1122 ամի։

2 Ընդարձակօրէն պատմէ Ուռհայեցին զդէպքս. « Զկնի այսո-
» րիկ տայր զպատերազմն՝ Ռոճէր՝ Հայոց զօրաց. կոչեաց զԼեւոն և
» ասէր. Վաղիւ քո զօրօքդ ելցես 'ի պատերազմ. փորձելով իմն ըզ-
» զօրսն Հայոց։ Յայնժամ ձայն տուեալ մեծ իշխանն Հայոց ամե-
» նայն զօրացն Հայոց՝ որ էին 'ի բանակին, և ժողովեցան ամենայն
» զօրքն Հայոց առ քաջ զօրականն Քրիստոսի Լեւոն. և նա յորդո-
» րէր զամենեսեան մի առ մի։ Եւ առ վաղիւն ելանէին զօրք այլ-
» ազգեաց ընդդէմ զօրացն Փռանկաց. և իշխանն Հայոց Լեւոն վա-
» ռեալ ունէր զզօրսն Հայոց ընդդէմ զօրացն Տաճկաց. և ձայն
» տայր զօրացն, և 'ի դիմի հարան զօրացն այլազգեաց. և գոչեաց
» ուժգին որպէս զառիւծ, և հանդերձ զօրօքն բախեցաւ 'ի վերայ
» նոցա և դարձոյց զնոսա 'ի փախուստ, և սրով (անկեալ) 'ի հետ մին-
» չև 'ի դուռն քաղաքին՝ կոտորեաց զնոսա, և արար զնոսա արդե-
» լականս, որ այլ ոչ ելին ընդ դուռն քաղաքին 'ի պատերազմ։ Եւ
» էառ իշխանն Հայոց Լեւոն քաջութեան անուն յաւուր յայնմիկ,
» և գովեցաւ 'ի մէջ զօրացն Փռանկաց. և յայնմ օրէ սիրեաց Ռո-
» ճէր զզօրսն Հայոց։ Եւ այսպիսի պատերազմաւ նեղէր զքաղաքն
» Ազազ, և սաստիկ պատերազմաւ հաւանեցուցանէր զնոսա, և էառ
» խաղաղութեամբ. և մարդոյ ոչինչ մեղուցաւ, այլ արձակեաց զըս-
» նակիչսն խաղաղութեամբ »։

3 Վահրամ։

4 Այսպէս իմանամ զաւանդեալն յԱպուլֆարաճայ Ասորւոյ, զոր մարթ էր, ըստ լատին թարգմանութեանն հակառակ մեկնել, և զՍահակ համարել անէր Լեւոնի. բայց զի էին սորա արդէն որդիք չափահասք 'ի դստերէ Պաղտինի տը Պուրկ, անդէպ է համարել զնա փեսայացեալ Սահակայ։

*ընդ որում 'ի հերուն հետէ մախայր. այլ ոչ ընդերկար պահեաց. քանզի լսէր զհամբաւ գալստեան Յունաց 'ի վերայ երկրացուն միանգամայն, և լաւագոյն համարէր դաշնակից իւր ունել զանհաշտ թշնամին նոցա։ Բայց զի մի՛ և ինքն դաւեցի 'ի Լևոնէ, էառ 'ի պատանդ զոմանս յորդւոց նորին, և զկորզեալն Սարուանդիքար, համդերձ Մսսաւ և Ադանաւ քաղաքաւ, և 'ի վերայ այսոցիկ 60,000 դահեկան եւս փրկանս, և յետ երկուց ամաց արձակեաց զնա։ Յայնմ սակաւաժամանակեայ միջոցի՝ գժտութիւն անկեալ ընդ հօրամյն եռանդնաշարժ որդիս Լևոնի՝ խաւարեցուցեալ էին զհանճարեղագունին յինքեանս զԿոստանդնի զաչս. այլք յորդւոցն՝ որք յետոյ հանդիսացլին 'ի պատմութեան՝ էին Թորոս Բ, Ստեփանէ և Մլեհ, և երիցագոյնն Ռուբէն որ 'ի հարճէ ասի ծնեալ, այր հաւժկու և ահարկու, այլ յետոյ ուրեմն 'ի գերութեան 'ի Կ.Պօլիս զրաւեալ 'ի կենաց, 'ի յաշաղկոտաց նախանձուէ, որպէս ասասցի։*

*Այն ինչ արձակեալ 'ի կալանաց անհանգիստն Լևոն, քանզի ակամայ կամաց զրկեալ էր յարևելեան և 'ի լաւագոյն մասնէ Կիլիկիոյ, զոր և 'ի դէպ ժամու վստահ էր թափել, դարձոյց առ ժամն զդէմն և զզէնս 'ի վերայ արևմտայնոյն. մխեցաւ 'ի Քարուտն Կիլիկիա. պաշարեաց զմեծ և զամուր և զշահաւետ մայրաքաղաքն Սելևկիա, սակաւուք հեռի 'ի ծովէ. բայց ծով թուէր իմն ասել ցնա, Մի՛ ցայս վայր, և յեղաշրջել զրուան թաւալումն բաղդի նորա։*

*Ի ժամանակին յայնմիկ զբիւզանդականն գահ ունէին Կոմնենեայք, ոչ անտոհմիկք բարուք, այլ և ոչ զուրկք յարիական իմացուածոց, եւս առաւել 'ի նախանձուէ՝ չօտարացուցանելոյ վատութեամբ զկալուածս քաջութեան նախորդաց իւրեանց. այսու միտք վառեալ մրմռայր 'ի վաղուց՝ անուանեալն 'ի մերոցս Կիւռ Ժան (Յովհաննէս) կայսր՝ 'ի վերայ Անտիոքացւոց և Հայոց, զի իւր սեփական համարէր զերկոցուն եւս զրաւածն. և գտեալ պարապ յառաջնին գործոց, գումարեալ զօր բազում՝ ամբարձաւ 'ի նաւս, և եկ յափունս Կիլիկիոյ։ Խրոխտեալ լեալ Լևոնի, եթող զպաշարումն Սելևկիոյ և փութացաւ ամրացուցանել զոստան իւր և զբերդ հզօր։ Երագեաց եհաս վաղվաղակի և կայսրն 'ի Կիլիկիա. մի ըստ միոջէ անձնատուր եղեն նմա Տարսոն, Մսիս, Ադանա, զորս Անտիոքացիքն ունէին, և լքին վատօրէն։ Բայց դիմակալութիւն մեծ երևեցոյց ոստանն Լևոնի՝ Անազարբա, յոյժ հզօրեղապէս յարդարեալ և պաշտպանեալ. զոր խարէութեամբ իմն 'ի բուռն առնալ խորհեցեալ Յովհաննու՝ զառաջինն յառաջ մատոյց զԹուրքաստանիկ նիզակակիցսն, համարելով թէ իբրու հին դաշնակցաց խնայեսցեն 'ի նոսա Հայք. այլ սոքա սրտաքս յարձակեալ՝ հարին չարաչար և հերքեցին. ապա փութացեալ Յունաց յօգնութիւն՝ մղեցին զՀայս 'ի քաղաքն. և պնդեալ ըզպաշարումն կանգնեցին մարտկոցս և բաղխոցս խոյից և մանգղիոնից. այլ ոչ այնքան վնասէին սոքա՝ որքան վնասեալք լինէին 'ի պաշարելոյն. քանզի հզօրագոյն եւս էին նոցա բաղխոտրայքն, որովք վէմս անարգիլս մեծութեամբ արձակեալ ջաղխէին զգլուխս խոյոցն հանդերձ ձգողօքն, և մեծամեծ շամփրակերպ ատրաշիկացեալ գեղարդեամբք ահեղ հրաձգութիւնս գործէին. և մինչ կէսք զայս առնէին՝ այլք խրախուսեալ զիրեար և ահագին գոչմամբ 'ի դուրս ոստուցեալ՝ հարկանէին տապալէին զամենայն ընդդիմակաց, և հուր 'ի մեքենայսն հարեալ՝ լուծանէին 'ի մոխիր։ Այլ թէպէտ և անհնարին տագնապ և կոտորած հասուցանէին այսոքիւք, սակայն առաւել զկծեցուցիչ էին Յունաց երգիծանքն և լուտանք նոցին, զոր ընդ ամբոխ աղաղակին խառնեալ՝ 'ի կայսր անգամ ձգէին. յորմէ յուէտ խայթեալ և սոցա՝ յամառէին 'ի վրէժխնդրութիւն. բայց զի խանգարեալ էին մեքենայքն, դադարեցուցին աւուրս ինչ զմարտն, յարդարեցին նոր մեքենայս՝ պատեալ կաշճին հողով և ողողեալ ջրով առժուժալ ընդդէմ տարափոյ շանթացեալ տիգացն. և թէպէտ առաւել քան յայսցանէ, յ'արտաքս յարձակմանց Հայոցն վտանգէին, այլ յաջողեցան անդադար բաղխմամբ անկէզ խոյոցն՝ խարխարել ոչ սակաւ զպարիսպն. և ահա միւս եւս տեսաւ պարիսպ ներքին, զոր խստագոյն եւս ձգամբ պաշտպանէին Հայք, ոչ փոքր եւս նախճիր գործելով 'ի պաշարողսն. սակայն ոչ կարացին սպառել զանհամեմատ բազմութիւնն և բթել զբաղխոցսն. խոնարհեցան լինել անձնատուր. և կայսրն վսեմաբար ներողամիտ գտաւ քաջացն, ոչ միայն կենաց՝ այլ և ընչից նոցին խնայեալ։ Բայց ցասեաւ անհնարին ընդ յամառութիւն պահապանաց դղեկին Վահկայի, որ յետին ամուր ապաստանի էր Լևոնի և տանն Ռուբինի. երդուաւ չմեկնել անտի մինչև 'ի բուռն առցէ զտեղին, թէպէտ և հարկ լինիցի բազում ձմերանց համբերել մինչև ցմահ. ազդարար 'ի ներքս զի թէ լսող լիցին այժմէն և տայցեն ըզբերդն՝ թողցէ, զնոսա ազատս, ապա թէ ոչ՝ մահու դատեսցէ։ Յանձն առին նոքա զմահ քան մատնել զամուրն, որ արդարև դժուարամատոյց էր և դժուարըմբռնելի. և զմիմեամբք ելանելով՝ խիզախէին 'ի կռիւ։ Մանաւանդ մի ոմն յազատացն՝ Կոստանդին անուն՝ հսկայ վիթխարի, ելեալ 'ի սեպ քարաժեռի միոյ վերագոյն քան զպարիսպն՝ բանս նախատալիցս և աղտեղիս տեղայր 'ի լուր բանակին և կայսեր, և մենամարտի ձայն տայր ախոյենից։ Առաքեցաւ ընդդէմ նորա 'ի ստորոտս պարսպին՝ Մակեդոնացի ոմն զօրական՝ Եւստաթ անուն, զինեալ սուսերաւ մեծաւ և պատապարեալ թանձր ասպարաւ. զոր տեսեալ Կոստանդնի՝ էջ գողիադաբար քամահանօք, 'ի վերայ յարձակեցաւ և բաղխէր հարուածս մեծամեծս. պաշտպանէր քաջիկ և ոսոխն զանձն իւր ամրակուռ վահանաւն. և զօրացեալ յանդուգն խրախուսանաց իւրայոցն՝ բազում անգամ ամբառնայր զսուրն, և անդէն լքանէին բազուկքն. մինչև ուր ուրեմն յաջողեաց ուժգին բաղխմամբ պատառել զասպար հսկային՝ զընդդէմ իւր կարկառեալն. և յաղաղակ բառնալ բանակին Յունաց յաղթողաձայնս, թիկունս դարձուցեալ Կոստանդնի եկ 'ի բերդն և ոչ եւս երևեցաւ։ Սրտաբեկ եղեալ ընդ այս բերդապահիցն անձնատուրք լինէին. ընդ որս և Կոստանդին կապեալ յանձնեցաւ վարիլ 'ի Կ.Պօլիս. այլ 'ի գիշերի 'ի ձեռն սպասաւորաց իւրոց արձակեալ 'ի շղթայիցն, և կոտորեալ զպահապանսն՝ 'ի բաց փախեաւ. բայց վերըստին ըմբռնեալ մատնեցաւ 'ի ձեռս կայսեր։ Իսկ Լևոն յամրագոյն եւս կիրճս լերանց իւրոց ապաստանեալ յա-*

*մաւէր մաքառել. մինչև չուրջ պատեալ պաշարեալ լինէր 'ի բացուստ 'ի նոյն յանխուսափելի կածանն. և 'ի սպառել ողեպաշիկ պարէնին՝ ապա կամաւ թէ ակամայ անձնատուր լինէր կնաւն և երեքումբ որդւովքն, Թորոսիւ, Ռուբինիւ և Ստեփաննաւ, զի Մլեհ առ ճօրլնի կայր։ Անկարծելի և անբաւ եղև խնդութիւն կայսեր ընդ գերութիւն աշարկու ախոյենին. զոր և կապեալ շղթայիւք՝ առաքեաց 'ի Կ. Պօլիս՝ ընտանեօքն հանդերձ, և աւարաւն, յորում և պատկեր Աստուածամօրն[1]։ Զառաջինն 'ի բանտ արկեալ՝ ապա յետ ամաց միոյ թողու Լևոնի յընդարձակի, մինչև յապարանս իսկ կայսեր մտանել և սեղանակից ևս լինել. այլ յորժամ 'ի քսութենէ յաշաղկոտաց խաւարեցուցին զաչս հուժկու երիտասարդին Ռուբինի՝ և մեռաւ նա 'ի ցաւոցն (1139), զանգիտեալ կայսեր 'ի վրէժխնդրութենէ հօր նորա, ետ վերստին 'ի բանտ արկանել. յորում նեղասրտեալ մեծոգին այն առիւծ՝ ոչ անագանեաց մեռանել. գուշակեալ, որպէս աւանդեն, յերազոյ, զի յաջողեսցի Թորոսի գերծանել և անդէն տիրանալ Կիլիկիոյ, ոչ միայն դաշտաքին՝ այլ և ծովեզերեայցն[2]։ Բայց համբաւն հզօրագոյն և երկարագոյն քան զկեանսն կնքեաց զանուն Նորին բերանով այլազգեաց՝ 'ի վերայ երկրին զոր կալեալ ունէր, Լևոնի երկիր։*

*Զեօթն ամ անիշխան, կամ անհայ իշխանութեամբ մնաց Կիլիկիա. քանզի ընդ գերելոցն՝ 'ի բաց վարեաց անտի Յովհան կայսր զամենայն Հայ մարտիկ, յորոցըն կացուցեալ երկոտասան հազար այր 'ի պահպանութիւն քաղաքացն և կարևոր տեղեաց. խորհէր և զորդի իւր սիրելի զկրսեր՝ Մանուէլ՝ կարգել առանձին թագաւոր Կիլիկիոյ, Պամփիւլիոյ և Իսաւրիոյ, միանգամայն և Անտիոքայ. և առեալ զնա ընդ իւր, յետ մահուան Լևոնի, յամի 1142 եկն միւսանգամ 'ի Կիլիկիա. նոյնպէս և 'ի սկզբան երկրորդի ամին (1143). յորում և յորս ելանելով 'ի սահմանս Անազարբայ, խոցեալ 'ի դեղեալ նետէ, մեռաւ անդէն, փոխանակ իւր ցուցեալ զնոյն ինքն զՄանուէլ։ Իսկ սորա թափեալ և ամրոցս ինչ 'ի ձեռաց Թուրքաց, և թողեալ անդ պահապանս, առեալ զմարմին հօր իւրոյ դարձաւ 'ի մայրաքաղաքն։ Այն ինչ մեկնեալ նորա՝ Ռեմունդ Բրինձն Անտիոքայ՝ ձեռնարկեաց ունել զհին կալուածս իւր՝ սահմանակիցս մեծի քաղաքին. իսկ զամուր ամուր տեղիս լերանցն՝ զՎահկա և զԴլկապան և զայլս՝ գրաւեալ էր Մէլէք Ահմատ ամիրայ Դանիշմանեան, յամի 1138-9[3]։*

*Յետ եօթնամեայ անիշխանութեանն Ռուբինեանց[4] և գերութեան պայազատացն, վերստին և պայծառագոյն ևս ծագեցաւ նշոյլ ազատութեան, 'ի ձեռն գերեկցի և միակ մնացորդի 'ի գերութեան Կ. Պօլսի, երիցու որդւոյն Լևոնի, որ է Թորոս Բ. զոր և երկրորդ անգամ հանեալ էր կայսրն 'ի բանտէ, գործեալ 'ի ցաւագին մահ հօր նորա և եղբօր. մանաւանդ զի էր նա երիտասարդ եռանդուն, զգօն և բարեկիրթ և ոչ անվարժ 'ի դպրութեանց, նա մանաւանդ և հմուտ յոյժ, ասեն, աստուածային գրոց, և լուծիչ դժուարիմաց բանից, զոր և մարգարէական շնորհս համարին պատմիչք մեր. էր և կերպարանօքն վայելուչ և ակնահաճոյ. թէ և «տեսլեամբ թխամորթ, երկայնունչ, դիմօք գեղեցիկ և աշարկու, զանգրահեր և լի շնորհիւ». որպէս անշուշտ յականատեսի վկայութենէ աւանդէ պատմիչ տոհմին։ Եւ որպէս գործք նորա ցուցանեն, ընդ արիական սրտի հօրն իւրոյ ունէր և զխոհականութիւն համանուն հօրեղբօրն, առաւելեալ երկոքումբք ևս քան թէ նուազեալ. որով երկրորդ կանգնիչ եղև տանն Ռուբինեանց, գերազանցեալ զամենեքումբք իշխեցողօք, բայց յեղբօրորդւոյ իւրմէ միւս Լևոնէ թագաւորեցելոյ, որում և երկրորդ գրիլ՝ չէին փոքր փառք։*

*Երկու են դէպք քսանևհինգամեայ իշխանութեան Թորոսի Բ. և բազմազանք, զորս մարթ էր վիպասանօրէն իսկ բանահիւսել, այլ մեք ըստ պահանջման ոճոյս համառօտեսցուք։ Եւ նախ, զի վկայեն ամենայն պատմիչք չգիտել զատոյգն այլ և այլ աւանդութեանց՝ յեղանակի ազատութեան նորին 'ի գերութենէ և դարձին. ոմանց կարծելով զհետ Յովհաննու կայսեր եկեալ յերկրորդի կամ յերրորդի գալստեան սորին. և այլոց՝ որ հաւանագոյն է, սիրելի լեալ յաչս ազնուազարմն տիկնոջ միոյ, փոխանակ բիւզանդական փափկութեանց՝ ժտեալ 'ի նմանէ զազատութիւն իւր և զհայրենեացն, և ընկալեալ ևս ոչ սակաւ նպաստ վասն ելիցն և ճանապարհին, թերևս և գիր ընծայութեան. և զանխլաբար խոյս տուեալ, նաւեալ 'ի Կիպրոս, անտի ելեալ կասկածանօք յափունս՝ զորս յետ ամաց և ճգանց կոխելոց էր սիգաքայլ ոտիւք. և յայտնեալ զանձն՝ նախ երիցու միոյ, և նովաւ եպիսկոպոսի միոյ ասորւոյ Աթանաս անուն, որ՝ որպէս թուի՝ ոչ ինչ ընդհատ 'ի Հայոց՝ զՀայոց իշխանութիւն մեծարէր քան զՅունացն, և զիւր իսկ երիվարն մատուցանէր նմա, և սրա ևս երկոտասան օժանդակս, յորս յարեցան առ սակաւ սակաւ և այլք, իրազեկք եղեալ գաղտնաբար. և Թորոսի մերթ յայտնեալ և մերթ «ծածկեալ զինքն թէ ո՛ ոք էր, և իմաստութեամբ փոքր փոքր ձգէր առ ինքն արս յաջողակս 'ի քահանայից և յաշխարհականաց... և օգնութեամբն Աստուծոյ փոքր փոքր տիրեաց հայրենեաց իւրոց». յորոյ և 'ի կենդրոն, 'ի բոյն լև-*

1 Ընդ ծանօթ քաղաքաց Կիլիկիոյ նուաճելոց 'ի կայսերէն՝ յիշեն Յոյնք և զանծանօթս ինչ տեղիս, Պերինլեփոն, Περιλοπόν, և Կոլոնիա, Κολώνεια.

2 Այսպէս աւանդեն պատմել Թորոսի հօր իւրում. «Թէ տեսի յանուրջս, զի այր մի տայր ցիս նկանակ մի հացի և ձուկն 'ի վերայ. և ես առի և քեզ ետու 'ի նմանէ։ Եւ հայրն խնդացեալ եւ լոյծ զտեսիլ որդւոյն, թէ Ունիս վերստին տիրել Կիլիկիոյ, զոր նախնիքն մեր կալան քաջութեամբ. այլ և ընդարձակեսցես զտէրութիւն քո մինչև 'ի ծով, զոր ձուկն նշանակեաց. սակայն ես յայն ոչ ժամանեմ»։

3 Բազումք 'ի ժամանակագրաց յիշեն զայս, ընդ որս և մերս Հեթում. «Թու. ՇՁԷ. Եկն Ահմատ Մէլիքն, և առ զԼևոնին տեղիքն 'ի Հոռմէն, զՎահկայն և զԿապանն և զԿարմիր լեառն»։

4 Սմբատ պատմիչ՝ միայն «Երեք տարի խլած կեցաւ», ասէ, երկիրն՝ յօտարաց, իմա յԱնտիոքացւոց և 'ի Մէլէք Ահմէտէ, կամ անագան զյափշտակութիւն սոցա վարկանելով, կամ վաղագոյն զդարձ Թորոսի, զոր հաւաստարմագոյն ժամանակագիրք նշանակեն յամի 1144 կամ 1145. բայց յառաջ քան զնա երևի գերծեալ և եկեալ Ստեփաննեայ, այլ որպէսն ոչ պատմի։ Արքունի պատմիչն զերկոցունց միանգամայն խօսելով ուրեք՝ ասէ, ծածկաբար փախեան. նոյնպէս և Վարդան (ՀԳ) զերկոսին 'ի միասին ասէ դարձեալս, և այն անագան յամի 1151։

րանց հարց իւրոց և յիւր ծննդական վայրն՝ ակնկառոյց եղեալ ընդարոյս ըղձանօք, նախ զայն կորզէր յօտարաց, զՎահկայն սաստ ամրակուռ, և ապա մի ըստ միոջէ «զՀամուսայն, զՍիմանակլայն, զԱռիւծբերդ, և այլ գաւառս էառ ընդ ձեռամբ». «Ձեռնտուութեամբ լեռնակողմանց Տօրոսի ազինս Հայոց՝ որ մնացեալ էին անտանօր». որպէս ասէ այլ յիշատակագիր, յաւելլով զի ընդ Վահկայի տիրեաց «և ամենայն Փռիւգիոյ, և յետ սակաւուց՝ Անարզաբայ և ամենայն դաշտակողմանն»։ Լուեալ և՛ եղբարց նորա Ստեփաննեայ, և Մլեհի՝ որ առ հռչակաւորն Նուրէտտինի կայր, եկին առ նա. երկոքին ևս գոռ մարտիկք, քաջութեամբն հաւասարելով Թերևս նմա, խոհականութեամբ՝ ոչ նոյնպէս. վասն որոյ մերթ զօրաւիգն և մերթ խոչընդոտն լինէին զգուշակոխ շաւղաց նորին։

Այն ինչ հաստատեալ Թորոսի զգահ իւր, կամեցաւ հաստատել և զտունն, կին ածելով (1149-50). յոր սակս ասի գնալ 'ի Ռապան՝ խնդրել և առնուլ զդուստր Ճոսլինի Բ[1], որ Թոռն էր Կոստանդնի հաւուն իւրոյ՝ 'ի դըստերէ. այլ յերթալն, քանզի երկոտասան միայն հեծեալս ունէր ընդ իւր և հետևակս ոչ բազում, պաշարեցաւ 'ի ճամբարէ Թուրքաց. զորս հարեալ ցրուեաց էանց գնաց ողջամբ[2]։ Յետ այնր ուշ եղեալ ընդարձակելոյ զսահմանս տէրութեան իւրոյ, նախ զմերձաւորն ոստանին իւրոյ Անազարբայ՝ զԹիլն Համտնոյ էառ. ապա զանուանի քաղաքն Մսիս, կալեալ 'ի նմին և զդոյն կուսակալն զԹումաս դուքս (1157)։ Լուեալ զայսոսիկ Մանուելի կայսեր՝ որ յայլ պատերազմունս զբաղեալ էր, և ոչ կամէր ջրել զվաստակս հօր իւրոյ՝ որում և գործակից իսկ եղեալ էր, և համարէր ապստամբ և մնասապարտ զԹորոս, առաքեաց 'ի վերայ նորա զեղբօրորդի իւր Անդրոնիկոս, զիշխան շամբուշ և վատթար. որում էին հըզօր նիզակակիցք՝ համազգիքն Թորոսի, իշխանքն արևմըտեան Կիլիկիոյ հպատակք Յունաց, Հեթմեանք, Նաթանայելեանք, տեարք Պապեռօնի և Բարձրբերդոյ. սոքիմբք հաստ արարեալ զԹիկունս իւր՝ եկն երկոտասան հազար արամբք, պաշարեաց զԹորոս 'ի Մամեստիա, և խրոխտաբար երգիծանօք պատգամ յղէր գալ 'ի հնազանդութիւն, զի կապեսցի կապանօք՝ որով հայր նորա կապեալն էր։ Իսկ Թորոսի յաջող ժամու մնալով 'ի մրրկուտ և յանձրևաթափ գիշերի ճեղքեալ 'ի ներքուստ զպարիսպս քաղաքին, ոստեաւ արտաքս, պակոյց պաւղեաց զբանակն. եհար զբազումս 'ի Յունաց, գերեաց զբազմագոյնս, զոփնլքորսն՝ մերկ և Թափուր 'ի զինուց և 'ի զգեստուց 'ի բաց արձակելով, և զազնիւսն դնելով 'ի պահեստի, ընդ որս և զՕշին տէրն Լամբրունի, զհայր մեծի Ս. Ներսիսի, զՎասիլ՝ տէրն Բարձրբերդոյ, և զՏիգրան՝ տէր Պռականու. իսկ տէրն Պապեռօնի Սմբատ՝ եղբայր Օշնի (և հաւ Թագաւորահօրն Կոստանդնի), «'ի մեծի մարտին մեռաւ առաջի դրան քաղաքին»։ Օշին եհատ փրկանս անձին քառասուն հազար դահեկան, ընդ կէսն ետ առժամայն, և փոխան կիսոյն զդեռարոյս որդի իւր Հեթում՝ 'ի պատանդ. զոր սիրեալ Թորոսի կամեցաւ և յետոյ փեսայացոյց ինքեան, 'ի պռոյգ դստերն համարեալ զպահանջ քան հազար դահեկանացն. այսպէս արարեալ և այլոց իշխանացն Հայոց՝ զերծան։ Զնոյն կամեցեալ առնել և Յունաց՝ խնդրեցին 'ի Թորոսէ հատանել անձանց իւրեանց գինս ըստ արժանեաց. և նորա ծաղր արարեալ ասէր. Եթէ արժէիք ինչ՝ ապա ոչ էր իմ կալեալ զձեզ։ Զկծեալք 'ի բանիցն՝ ստիպեցան տալ փըրկանս ծանունս. զոր առեալ յաղթողին՝ առաջի նոցա բաշխէր զարծաթն զօրականի իւրում. Որպէս զի, ասէ, միւսանգամ կալցին զձեզ. և արձակէր զնոսա 'ի բաց։

Տեսեալ կայսեր զի չէ գործ դիւրին ըմբռնել զԹորոս, որպէս միանգամն, և զի չէր ինքն պարապ, և ոչ յիւրան վստահանայր, դրդեաց զգոռ սուլտանն Իկոնիոյ զՄասուտ՝ ընդդէմ Թորոսի, գանձ բազում խթեալ, և աւելի ևս խոստացեալ նմա։ Երկիցս և երիցս ամ զամի կնի (1153-5) ել սուլտանն և մխեցաւ զօրօք բազմօք 'ի սահմանս Հայկազնոյն, այլ ինչ ոչ յաջողեցաւ. քանզի զառաջինն՝ կանխաժամանն գտեալ զԹորոս 'ի գլուխս լեռանց ընդդէմ իւր, և խօսեցեալ 'ի հաշտութիւն՝ յետս դարձաւ. յերկրորդումն՝ զօրն առաքեալ 'ի նմանէ առաջնորդութեամբ Եաղուպի ուրումն՝ ոչ պատահեաց Թորոսի, որ յայլ ինչ կողմն դիմեալ էր յապուռ, այլ հանդիպեալ Փռանկ ասպետաց և Ստեփանէի ընդ նոսա՝ 'ի սահմանս Անտիոքայ, խորտակեցաւ իսպառ[3]. յերրորդումն՝ առաքեաց ստուարագոյն գունդս զօրաց յաւար և յաւեր. և պաշարեալ նստան զԹիլն Համտնաւ. յայսմ նուագի ևս ասպետքն և Ստեփանէ եղբայր Թորոսի՝ զառաջս առին Թշնամեացն. և զվերջն՝ վերին տեսչութիւնն վատթարեաց. քանզի անկաւ ախտ սաստկման յերիվարս այլազգեացն և 'ի հեծեալս, այլ և աճարկու խռովութիւնք և Թօնք օդոց, որոտմունք և հրաձգութիւնք, և փոթորիկ ուժգին որ զծառս արմատախիլ առնէր, զի էին աւուրք ամարայնոյ. յորոց յամենայնէ պակուցեալ այլազգեացն՝ վերջոտնեալ 'ի բաց գնացին. և յետ ամաց ինչ մեռանէր սուլտանն Մազսուտ։ — Վրիպեալ և յայսմանէ՝ դրդեաց Մանուէլ զարևմտեայս ընդդէմ Թորոսի, զԱնտիոքացիս և զՏաճարական ասպետս, ընդ որոց միաբա-

1 Այս ըստ Միխայէլի Ասորւոյ. ըստ այլոց՝ Թորոս առեալ էր 'ի կնութիւն զդուստր Թովմայի Պայլէ, որ մօրաքեռորդի է իւր. մարթ է ստոյգ լինել միոյն, այլ և երկուցն, յետ մահուան առաջնոյ կնոջն համարելով առեալ զերկրորդն, կամ թէ ոչ յաջողեալ առնուլ զառաջինն։

2 Նոյն Միխայէլ՝ 3000 ասէ զկոտորեալսն 'ի Թուրքաց։ Այլ և յառաջ քան զայս յարձակեալ նորա «յերկիրն Կապուդակացւոց 'ի վերայ Թուրքաց, և դարձաւ բազում գերութեամբ և աւարաւ, և արիական անուամբ»։

3 Պատմիչն Եդեսիոյ գրէ. «Զի սա 'ի մեծամեծաց որդւոյ իւրոյ՝ Մէլքին՝ որոյ անուն Եաղուպ ասէին, այր ժանտ և չարասէր, բազմութեամբ զօրօք իբրև երեք հազար, ապստամբ յերկիրն Անտիոքու առաքէր։ Իբրև անցին ընդ տեղին այն՝ զոր Դռունն կոչեն, յանկարծակի իբրև յերկնուստ առաքեալ 'ի քրիստոսասէր զօրաց Փրերոց, և եղբայր ազարապետին Ստեփանէ, յանկարծակի 'ի վերայ անկեալ՝ առհասարակ զամենեսեան սատակեցին. և զգլխաւորն իւրեանց Եաղուպն՝ նիզակաւ ընդ լերդն անցուցեալ, և գառնագոչ ձայնիւ եհան զդառնացեալ ոգին»։ Զնոյն բան համառօտէ Վարդան (ՀԳ). «Աղուպն զօրագլուխ նոցա՝ կամեցաւ գնալ երեքհազարաւ յԱնաւարզա՝ 'ի կողմանս Անտաքու. յորոյ վերայ անկեալ Ստեփանէ եղբայր Թորոսի՝ սատակեաց զամենեսին. և 'ի լսել զձայնն գուժին 'ի բուն բանակին՝ գողացին առհասարակ, և ոչ մնաց շունչ զօրութեան 'ի նոսա։ Եւ հազիւ զերծեալ սուլտանն՝ անկեալ 'ի յորջս իւր», և այլն։

Նեալ և Յունաց որք 'ի Կիլիկիա, 'ի վերայ յարձակեցան. բաղխեցան ուժգին առ Աղեքսանդրեակ քաղաքաւ, և յերկոցունց կողմանց ոչ սակաւ նախճիր լինէր. և իբրև նոր գունդ ասպետաց հասանէր 'ի Թիկունս դաշնակցացն՝ ոչ վստահացեալ Թորոսի ընդդէմ ունել այնքան բազմութեան, յանձն[1] էառ Թողուլ 'ի նոսա զբերդորայս սահմանաց Անտիոքայ՝ զոր գրաւեալ էր, և խոստանալ 'ի հաշտութիւն։ Ռենալտ[2] խնամակալ կամ պայլ իշխանութեան Անտիոքայ՝ գլուխ դաշնակցացն՝ մրիպեալ 'ի յուսոյ վարձուցն խոստացելոց 'ի Յունաց, փոխեաց զհաւատն և միաբանեցաւ ընդ Թորոսի ընդդէմ նոցա, և հանդերձեալ նաւս Թափեցաւ 'ի Կիպրոս, զի էր այն տակաւին ընդ իշխանութեամբ Յունաց. և սրար 'ի նոսա կոտորած անողորմն և անարժան, որում գործակից այլ և Թելադիր ասեն մերքս՝[3] զԹորոս. բայց հաւատարիմ պատմիչն արևմտեայց Գուլիելմ Տիւրացի, որ մանր պատմէ և զայս դէպս, միայն զՌենալտ յիշէ ստանոր, և յետոյ յաջողութեամբ խօսի զԹորոսէ։ Թէ զոյր ոք գործակից 'ի Հայոց՝ յեղերական վրէժխնդրութեանն յայնմիկ, մարթ էր կարծել զՄլեհ կամ զՍտեփանէ, որոյ մեծ էր ատելութիւն ընդ Յոյնս. և բազում ինչ անհրաման և հակառակս կամաց Թորոսի գործէր. որպէս յամի 1157 ժողովեալ գունդ պատերազմողաց՝ արշաւեաց 'ի սահմանս սուլտանին՝ ընդ որում դաշն խաղաղութեան էր Թորոսի, և էառ զԿոկիսոն և զԲերդուս. ընդ որ սրտմտեալ սուլտանին եկն Թափեաց զԿոկիսոն, իսկ զԲերդուս ինքն իսկ Թորոս դարձոյց 'ի նա՝ յոչ կամս եղբօրն. որոյ ոչ խրատեալ այսու, գնաց «զողանալ զՄարաշ, և ոչ կարաց». անտի դարձաւ 'ի վերայ Պեհեսնոյ ամուր բերդաւանի, որոյ բնակիչք նեղեալք 'ի տեառնէ իւրեանց՝ հրաւիրէին զնա. և եկեալ նորա դարանակալ լինէր. այլ բերդատեառնն իրազեկ լեալ՝ հրամայեաց զմասնիչսն ընդ բերդն 'ի վայր հոսել. յորմէ զարհուրեալ բնակչաց աւանին՝ ապաւինեցան 'ի Ստեփանէ. և նորա առեալ տարաւ բնակեցոյց զնոսա 'ի դաշտին Անազարբայ, ուր 'ի տապոյ օդոց տագնապեալ՝ գրամահ եղեն։ Ընդ այս դչարեալ Թորոսի՝ կալաւ զՍտեփանէ և արկ 'ի բանտ, և յետ սակաւ ամսոց արձակեաց։ Թերևս սա իսկ էր որ յամի 1155 մխեցաւ ասպատակութեամբ 'ի սահմանս Հալպայ, 'ի միճակս Նուրէտտինի, Թէ և յիշատակագիր ոմն մեր ժամանակակից՝ վասն Թորոսի ասէ. «Բարեպաշտ և մեծ իշխանն քրիստոնէից Թորոս՝ մինչ եկն 'ի վերայ Հալպայ, և բազում տեղիս և ամրոցս առեալ քանդեաց. և յաղթութեամբ բազմաւ դարձաւ 'ի բնակութիւն իւր»։

Յետ այսորիկ միւսանգամ հարկ եղև Թորոսի ոգորել ընդ Յունաց, զի գրեաթէ զմեծ մասն Կիլիկիոյ կալեալ էր, հանդերձ իսաւրիոյ նահանգաւ, և ոչ հանդուրժէր կայսրն Մանուէլ ներել նմա. առաքեաց վերստին 'ի վերայ նորա մի ըստ միոջէ երիս զօրավարս, յորոց յետինն՝ Անդրոնիկոս միւս կոչեցեալն Եւփորբէն, ընտանի կայսեր, մինչ եկեալ պաշարէր զՏարսոն (1156-7), Թորոս նիզակակցութեամբ Անտիոքացւոց 'ի վերայ հասեալ եհար երեկ զբանակ նորա՝ կոտորեալ երեք հազար արանց. այլք մազապուր անկան 'ի նաւս իւրեանց. զորս հանդերձ զօրավարաւ նոցին զերծոյց Թագաւորն Երուսաղեմի Պաղտին Գ., որ հանդերձէրն փեսայանալ կայսեր։ — Իսկ ուրեմն ազատեալ սորա 'ի հոգոց պատերազմին Սիկիլիոյ, յելս կոյս 1158 ամին ամբարձեալ անհամար զօրաց 'ի նաւս՝ եւ յԱտալիա, զալ խնդրել զերկոցունց միանգամայն վրէժ, զԱնտիոքացւոյն և զԹորոսի։ Սա խոյս ետ 'ի Տարսոնէ, և ամրացուցեալ զընտանիս իւր յանմատոյց ամրոց մի Տանկիկար կոչեցեալ, ինքն տեղի 'ի տեղւոջէ փոխէր 'ի լերինս անկոխելիս. զոր ոչ կարացեալ որսալ կայսեր, նուաճեաց զքաղաքսն իւն, և դադարեաց ձմերել 'ի Տարսոն։ Անդ յանդիման եղև նմա պայլն Անտիոքայ իբրև անձնապաստ մահապարտ՝ մատուցանելով կայսեր սուսեր մերկ, և միջնորդութեամբ Թագաւորին Երուսաղեմի եգիտ շնորհս, և որպէս ծառայ զտէր՝ եմուծ զնա մեծաւ շքով յԱնտիոք (1159)։ Այսպ յոլովք անկան նմա Թագաւորն Երուսաղեմի և զլխաւորք ասպետաց վասն Թորոսի. զի ասէին, «այր իմաստուն է, և կիրթ և վարժ և կորովի 'ի պատերազմունս և քաջասիրտ և մեծախորհուրդ, և առ կարիս քրիստոնէից յոյժ պիտանի, և առատաձեռն, և ամենայն բարի տեսակաց լի»։ Առաւել քան զբանսն՝ արիական և վայելուչ կերպարանք և բանք քաջին՝ յանկուցին և զիջուցին զսիրտ փառասէր կայսերն. ապա և ընծայքն զոր յետ ասուրց երեր մատոյց Թորոս նմա և բանակի նորին, պատճառեղէն 'ի կեղակոր և ձիս ազնիւս 'ի հեծելութիւն. և Թուի Թէ յայնժամ անուանեաց զնա Սեբաստոս, և հաստատեաց յիշխանութեան երկրին իբրև զմի յարքունի ստորականաց, «Ռսկի փուլովք նըմա շնորհեալ», ասէ միպասանն[4]։ —

Այլ ոչ և այսու եղև կատարեալ միաբանութիւն ընդ նոսա, և ոչ իսկ առ սակաւ մի ժամանակ. քանզի 'ի դառնալ կայսերն 'ի բաց, 'ի դերև հանելով զյոյս խաչակցութեան ընդ արևմտեայց, Թուի ընդ այլոց յուղարկաւոր երթալ նմա և Թորոսի մինչև 'ի նաւահանգիստն՝ ուստի մեկնելոց էր Մանուէլ. և յայնժամ սաստ կամ սուտ կասկած եղև դաւելոյ 'ի նմանէ Թորոսի՝ առ քաւութեան ումանց, և զանգիտեալ՝ Թէ զուցէ ձերբակալ եղեալ վարիցի զօրէն հօրն 'ի դուռն և 'ի բանտ Բիւզանդիոյ, խոյս ետ զիշերայն, և գնացեալ ամրացաւ 'ի Վահկայն. ապա ստուգեալ զմեկնիլ կայսերն՝ եկ և էառ դարձեալ զԱնազարբա և զՄոփս և զաւանս նոյին՝ վստահաբար[5]. և յայնմ հետէ առաւել ևս արթնութեամբ հսկէր

[1] Գուլ. Տիւր. ԺԸ, Ժ. ասէ Ռենալտի ձեռաւ կոտորածն վանեալ զԹորոս։

[2] Renaud de Chatillon.

[3] Որպէս Սմբատ և Ուռհայեցին. իսկ Միխայէլ Ասորի՝ Թեայէտ և կամակցութեամբ Թորոսի ասէ զգործն եղեալ, այլ գործօն զՌենալտ միայն ցուցանէ։

[4] Այսինքն է Բարսեղն Վահրամ, որ զայս դէպս յառաջ քան զմերազգիացն կարգէ, բայց ոչ յարմարի ընդ ժամանակին։

[5] Զայս ևս դէպս նախակարգէ Վահրամ, որպէս և այլ ոք յիշատակագիր՝ այլ ոչ ժամանակակից. յորոց բանից այնպէս իմն Թուի՝ եթէ կամ երկիցս եկեալ իցէ Մանուէլ 'ի Կիլիկիա ընդդէմ Թորոսի, կամ նախ եկեալ իցէ նորա, և յետ այնորիկ պատերազմն մեծ մղեալ առ Մսաւ, և ապա ասպատակութիւնք սուլտանին իկոնիոյ։

և առաւելոյր 'ի զօրութիւն, և լինէր պատկառելի շրջակայիցն. հաշտութեամբ կեցեալ ընդ Անտիոքացւոյն, և առաւել սիրով ընդ արիական Թագաւորին Երուսաղեմի՝ Պաղտինի Գ., որ մայրենեաք ազգակցութիւն ունէր ընդ Հայոց. չոգաւ ընդ նմա 'ի վերայ Նուրէտտինի 'ի վրէժ գերութեան և կալանաց Ռէնալտի Անտիոքայ իշխանին, որոյ անխորհրդաբար 'ի մարտ կաքաւեալ՝ ըմբռնեալ էր 'ի դարանակալաց, և յարգելանի կայր ամս վեշտասան. այլ 'ի տարաժամ մեռանել Թագաւորին ('ի սկիզբն (1162 ամի), ամփոփեաց և Թորոս զձեռն իւր։ — Այսպ գտեալ պարապ՝ յայնմ ամի կամ 'ի միւսում՝ գնաց յԵրուսաղէմ յուխտ սրբոց տեղեաց, և 'ի շնորհաւորել զնորընծայ Թագաւորն Ամաւրի, զեղբայր սիրելւոյն իւրոյ Պաղտինի, յորմէ և ինքն արքայապէս մեծարեցաւ. վասն որոյ և յօժարեալ հաստատուն պահել զմտերմութիւնն ընդ այնպիսեաց արիականաց, խոստացաւ լինել միշտ նիզակակից խաչազգեստիցն. և (որ արժան է նկատման) հաստւցանել նոցա գունդ օգնականի երեսուն հազար արանց, և այժմէն իսկ տալ հնգետասան հազար. վկայ զօրութեան իւրոյ և ընդարձակութեան մեծակաց որոց տիրէր. այլ իբրև խակամիտ և ղօշաքաղ ժառանգաւորք ոմանք սկսան պահանջել և զատատանորդ հասից, 'ի դերևհանին զմեծագոյն չահ օգտի իւրեանց։ — Ընդարձակութեան երկրի իշխանութեանն Թորոսի անաչառ վկայ հանդիսացաւ գրեաթէ 'ի նմին ժամանակի (1163-4) հռչակաւոր ուղևորն Հրեայ՝ Բենիամին Դուտելայ, որ զսկիզբն սահմանաց նորին (յարևմտից հարաւոյ) գրէ լինել 'ի Կոռիկոս, զաւարտն 'ի Դուկիմ կամ Դուքիա քաղաք, որ յայտ է թէ չէ Եւդոկիա, այլ թէ ո՞ր է՝ ոչ ստուգեցաւ, եթէ չիցէ սխալ կամ պակաս գրեալ փոխանակ Անտիոքայ, զի և յայլմէ կողմանէ ասէ սահմանակից Թոգարմայ այսինքն Թուրքաց։ — Յայնմ ժամանակի (1164) դարձեալ զօրաժողով լեալ արևմտեայց ընդ նորընծայ Բրնձին Անտիոքայ՝ Դ. Պեմունդի և եղբօր նորա Ռեմունդի իշխանի Տրիպօլեայ, այլ և միաբանութեամբ դքսին Յունաց Կոստ. Կալամանի որ նստէր 'ի Տարսոն, հրաւիրեցին և զԹորոս, որոյ այն ինչ հաստատեալ էր զՊեմունդ յաթոռն՝ թափեալ 'ի գրկանաց գահաստէր մօր նորին Կոստանդեայ. և միաբան յարձակեալ հարին զՆուրէտտին 'ի սահմանս Տրիպօլսի. այլ իբրև արտմտեալ սուլտանին յարոյց բանակ աշխարհագումար՝ զգուշացոյց Թորոս զդաշնակիցսն մի կալ հակառակ, այլ ցրուել գնալ յիւրաքանչիւր տեղիս, որպէս և ինքն արար. իսկ նոցա ոչ հաւանեալ՝ ելին 'ի մարտ, հարան և բեկան (10 օգոստ. 1164). ամենայն գլխաւորք նոցա գերի անկեալ արկան 'ի բանտ, ուր յամաց բազմաց Ռենալտն և Ճօսլին Գ. արգելեալ կային. և միայն Մլեհ եղբայրն Թորոսի նիզակակից նոցին՝ օգնականութեամբ ցեղի միոյ Թուրքմէնից բարեկամաց իւրոց՝ մազապուրծ եղև։ Գթացեալ Թորոսի՝ աղերս արկ առ Նուրէտտին արձակել զկալանաւորսն. և 'ի չհաւանել նորա՝ արշաւեալ 'ի կողմանս Մարաշայ՝ եհար զընդդիմակացն. ապա զինուց զգուշ յաղթականն 'ի պայմանս հաշտութեան, փրկանօք և տուգանօք արձակել զնոսա, հարիւր հազար դահեկան ոսկի պահանջեալ վասն Բրնձին։

Ոչ սակաւ տագնապք հասին Թորոսի և 'ի յետին ամս իշխանութեանն, մանաւանդ յերեսաց իրահամարձակ եղբարցն. յորոց Ստեփանէ անհաշտ սխացեալ ընդ Յոյնս՝ նեղէր ցանկ որպէս զխարդ և կարէր. ջանայր կորզել և զմնացեալսն ընդ իշխանութեամբ նոցին տեղիս. և տիրեաց իսկ Սեաւ լերանց. ընդ որ ոչ ինչ ընդհատ ջեռեալ և Յունաց վրիժու՝ գործեցին գործ մի դժնդակ, ըստ Մանտալեանց խաբէութեան, և չարագոյն ևս. 'ի ձեռն դքսի Համուսն բերդի՝ հրաւիրեալ զնա սիրոյ պատճառաւ, ըմբռնեցին և 'ի կաթսայ յեռանդան արկեալ չարամահ արարին (1165). « ոչ խնայելով, ասէ Պատմիչն, յայնպիսի քաջ զօրական[1] ». ասացուք՝ թէ և յանձինս իւրեանց. քանզի չէր դժուարին խելամտել՝ թէ ոչ առանց ծանրագոյն ևս պատուհասի վճարիցի փոխարէն այնպիսի գործոյ՝ 'ի կորովի եղբարց խոշտանգելոյն. որք և « զայրացեալ ընդ գործ նենգաւորացն, ասէ պատմիչն » մեր, առին զվրէժ արեան նորա յանմեղ Յունաց՝ հազարապատիկ. որոյ արեանցն պարտական՝ տուկն էր ». մինչև բիւր մի Յունաց կոտորեալս 'ի Հայոց ասէ ժամանակից պատմիչ կաթողիկոսն Աւորւոց. այլ հարկ է թէ ոչ աւագակորէն զամենայն, այլ և պատերազմաւ։ Առ որս յօգնութիւն եհաս հին շամբուշ չահատակն՝ Անդրոնիկոս Կոմնենոս, զերծեալ յերկոտասանամեայ կապանաց բանտին, և զվաղեմի վրէժ պարտութեանն լուծանել խնդրելով՝ յարդարեաց բանակ այլանդակորէն, 'ի կերպարանս գազանաց դասաւորելով զգունդսն, առ առակէ. իսկ Թորոսի յայլ և այլ կողմանս մայրեաց թագուցեալ զիւրսն յարձակեցաւ և ինքն արիաբար, եհար և վարատեաց զգազանաձևն. և թէպէտ հարեալ և ինքն յԱնդրոնիկեայ ընդ՝ ասպարն անկաւ յերիվարէն, այլ հազիւ ճողոպրեցաւ 'ի նմանէ որ եհարն՝ վատաբար փախչելով յԱնտիոք։ Թերևս յայս միջոց ժամանակի մարտից՝ եղեն և դէպք յարձակելոյ Յունաց 'ի Բարձրբերդ և չարաչար հարեալ լինելոյ 'ի Թորոսէ, և բազմաց գերի անկանելոյ. զոր Վահրամ և այլ յիշատակագիր՝ նշանակեն յառաջին մարտին եղեալ և 'ի գալստեան Մանուէլի կայսեր[2]։ Զ Բրինձն Անտիոքայ միջնորդ կալեալ միւս Անդրոնիկոս Եւփորբեն՝ դադարեցոյց զվրէժս Թորոսի և Մլեհի։ — Յայսմ ևս պատեհի երևի զարթուցեալ հակառակութեան Հեթմեանց՝ համախոհիցն Յունաց. մանաւանդ զի Օշին երբեմն գերեալն 'ի Թորոսէ, ասի յայլում նուագի դրդեալ ընդդէմ նորա զմեկնակազէնս Թուրքմանաց, և տուեալ գերել 'ի բաժնէ նորա հինգ հարիւր աղջիկ կոյս. արդ դադարեալ յարտաքնոցն դարձաւ Թորոս ընդդէմ սորա, դիմեաց 'ի վերայ անառիկ բերդին Լամբրունի, աղարտել զսահմանս նորին. և երկուստեք պատրաստութիւնք լինէին ուժգին ևս բախմանց, թէ և խնամեցեալք իսկ էին յետ առաջնոյ նուագի

1 Ոմանք կանխագոյն գրեն զգործն յամի 1163 կամ 1164, այլ արքունի պատմիչն յայսմ ամի (1165) դնէ, և պատմական դէպք գործոց Թորոսի իսկ զայս պահանջեն։

2 Որպէս նշանակեցաք և մեք 'ի վեր անդր, չէր Մանուէլի եկեալ զառաջինն 'ի Կիլիկիա. և յառաջնումն մարտի ժամանակին Բարձրբերդ չև ևս էր անկեալ 'ի բուռն Թորոսի։

պատերազմին Մամեստիոյ. այլ 'ի հռչակել համբաւոյ իրացս՝ ոլացաւ 'ի հեռուստ հեզաթև հրեչտակ խաղաղարար՝ չնորհալին Ներսէս Կլայեցի, եղբայր Գրիգորիսի կաթողիկոսի, մինչ մերձ էր սա 'ի վախճանն, և արար հաչտութիւն, ըստ իւրումն աստուածատուր իմաստութեան։ Ի հանդարտելն ընդ հեռաւոր ազգակցին՝ 'ի մերձաւորէն փոքր մի ևս և դաւաճանեալ լինէր Թորոս, յիւր իսկ միակ մնացեալ եղբօրէն, 'ի դժպիհն Մլեհէ. որոյ յարեալ յինքն զիւր նմանաբարոս՝ սպանանել կամէր զաւագ եղբայրն, յաւուր միում որսի աղագաւ գոլով նոցա ընդ մէջ Մասայ և Աստանայ. այլ Թորոսի նախազգաց գոլով կալաւ զնոյն ինքն զդաւաճիրն, և պախարակեալ առաջի զօրացն և իչխանացն, ետ նմա կարասի բազում և զէնս և գանձս, և եհան յերկրէ իւրմէ. և նորա գնացեալ յարեցաւ դարձեալ 'ի Նուրէտտին, և եգիտ չնորհս յաչս նորա։

Այսքանեաց ամբոխից և գոռից ժուժկալեալ քաջն այս այր արանց և խոհեմամիտ Թորոս, եթէ ոչ զբոլոր՝ այլ զմեծ մասն Կիլիկիոյ սեփականեաց այնուհետև տոհմի իւրում, և յապահովեաց, բարեկամս իւր առնելով զՀիւրական և զՏաճարական ասպետսն. ոչ մոռանալով ընդ քաղաքականին և զբարեկրօնութեան հրահանգս և չինութիւնս. զոր և գլխաւորեաց յանձին իւրում, կրօնաւորական ագեմաւ ծածկեալ զչուք փառացն և զյաղթական զէնսն, որովք մի 'ի վեհագունիցն յազգի մերում երևեցաւ. և այսպէս հանգեաւ յամի 1169. առաջին յիչխանազանց որք ընդ վարդապետաց եդան 'ի քնարանս գերահռչակ վանաց Դրազարկու, թողեալ 'ի հաստոջ զիչխանութիւն տանն՝ զոր իբրև յոչէիցն յարոյց և կառոյց։ Համառօտ յիչատակագիր գործոց Ռուբինեանց յելս կոյս ԺԳ դարու, 'ի գովելն զհանճար Թորոսի, և զհասու լինել «և զբազում դժուարալոյծ բանս մեկնեալ», յաւելու, թէ և «գտանի այժմ առ մեզ». իցէ թէ և առ մեզ յետինքս։

Մանկիկ մի փոքրիկ թողեալ էր Թորոսի իւր պայազատ, Ռուբէն անուն, և եդեալ նմա խնամակալ և Պայլ զԹովմաս, որ յոմանց ասի լինել աներ իւր. հաւաստագոյն[1] ևս է լինելն քեռորդի Թորոսի, և միոյ յազնուացըն Անտիոքայ, յոր վստահանայր և առ կենդանեաւն. և 'ի գալ կայսերն յիւր վերայ, ընդ սմա և ընդ Գէորգայ ումեմն՝ խուսէր յամուրս լերանց։ Այլ մի ոմն յեղբարց Թորոսի տակաւին կենդանի էր, Մլեհ. դէմք դժնդակք 'ի տոհմի անդ Ռուբինեանց և 'ի պատմութեան մերում. որ և միակ մնացեալ էր 'ի Կիլիկիա 'ի գերութեան եղբարցն, և այսր անդր տատանեալ՝ երևի վրիպեալ յըզգոյչ դաստիարակութենէ, մանաւանդ առ յաճախելոյ առ այլազգեօս և յաւէտ յարքունիս Նուրէտտինի. առ որում էր և 'ի ժամանակի մահուան եղբօրն՝ մերժեալ 'ի սմանէ, և ընկալեալ յայլազգւոյն զիչխանութիւն Կուրիս գաւառի. այլ յառաջն երբեմն մտեալ էր 'ի կարգ Տաճարական ասպետաց, ընդ արիական վարժից նոցին ստացեալ և զըմբոստ խրոխտանսն. վասն որոյ մերժեցաւ իսկ 'ի նոցանէ, կամ ինքնին կարգուրաց եղև. մինչև կարծել ոմանց թէ և 'ի քրիստոսական հաւատոց անկեալ իցէ և մոլիմացեալ. որ չէ հաւանելի, որպէս և ոչ ժխտելի՝ զի ոչ քրիստոնէաբար վարէր ընդ քրիստոնեայս անգամ. հալածէր և խոչտանգէր անխտիր զռամիկ և զիչխան, զաչխարհական և զեկեղեցական։ Արդ 'ի լսել զմահ Թորոսի՝ առեալ նորա գունդ զօրաց 'ի պաչտպանէն իւրմէ Նուրէտտինէ՝ եկն յափչտակեաց զիչխանութիւնն, հազիւ ճողոպրեալ Թովմայի փախչել յԱնտիոք. այլ անպարտ պայազատն՝ մանուկն Ռուբէն՝ որ զերծեալ կայր 'ի Հռոմկլայ ընդ փարելի թևօք Սրբոյ Շնորհալւոյն, գաղտնապէս 'ի մահ վարեցաւ յամպարչտաց ոմանց, ոչ գիտեմ յանգէ՞տս Մլեհի թէ կամաւ։

Ցար 'ի յուզման եկեաց և վարեաց սա զբռնակալ իչխանութիւնն, զամս վ՚ց կամ եօթն. ատելի ընտանեաց և ահարկու օտարաց, ոչ առնլով ակն բարեկամի և թչնամւոյ, և ոչ այլ օրինաց կալով պատկառ, բայց յանձին կամաց. և ոչ ուստեք ունելով երկիւղ, վստահացեալ 'ի Նուրէտտին, ընդ որում եղբայրացեալ իմն ասի սերտիւ, և դրամ ևս հատեալ զոյգ երկոցուն անուամբք. դաչնակից եղև և միւսում հզօր դրացւոյ, ընդ սուլտանին Իկոնիոնի, յերկուց դիմաց գոլ յապահովեալ[2]։ Որպէս է գուչակել՝ առաջին գործ նորա եղև վրէժխնդրութիւն, վասն անարգօրէն՝ թէ և արդարապէս՝ մերժմանն 'ի հայրենի երկրէն, «և քինախնդիր լեալ հակառակացն իւրոց, ասէ պատմիչն, զերիեալ տառապեցոյց զնոսա, և » մատնեաց բանտից և կապանաց. և ձեռն արկեալ յե» պիսկոպոսունս՝ ատամնաթափ առնէր. և ուր կասկա» ծէր թէ գոյր ոսկի կամ արծաթ՝ յափչտակէր . . . և » լցաւ ոսկւով և արծաթով, և յղփացաւ փարթամու» թեամբ 'ի զրկանաց անմեղաց. և էր սա այր զազանա» միտ, չարաբարոյ և անողորմ. և ատէին զնա ամենե» քեան, և ցանկային զերծանել 'ի նմանէ, այլ ոչ գտա» նէին առ ժամայն տեղի». Թո՛ղ և զայլ աղտեղի գործս նորա։ — Դէպ եղև երբեմն թագաւորին Երուսաղեմի և այլոց իչխանաց դեսպան առաքել առ Մանուէլ կայսր զոմն յազնուաց իւրեանց, Ստեփանոս կոմս Պլուայ, (de Blois), անցանելով ընդ երկիր Մլեհի. իրազեկ լեալ սորա՝ դարանակալ եղև առ Մսաւ, կալաւ, կողոպտեաց յամենայնէ, և տուեալ նմա ձի մի անպիտան արձակեաց. նոյնպէս կողոպտէր և զուխտաւորսն անցաւորս ընդ սահմանս իւր։ Առաւել ևս ոխացեալ ընդ Տաճարական ասպետս երբեմն իւր կարգակիցս՝ խաղաց հալածեաց յերկրէ իչխանութեան իւրոյ, գրաւելով զկալուածս նոցին՝ որ 'ի միջոցս սահմանաց իւրոց և Անտիոքայ։ Ոչ խղճէր արդեօք կոխել և զիչխանութիւն Բրնձին, մանաւանդ զի 'ի նա ապաւինեալ էր Թովմաս պայլ. յայս սակս թուի ընդդէմ նորա յարուցեալ ինքնին Բրինձն, զրդեալ և յոմանց յիչխանացն Հայոց. այլ մինչչև հանդիպեալ իրերաց՝ միջնորդ հաչտութեան եմուտ թագաւորն Երուսաղեմի, բազում անգամ հրեչտակս առաքեալ և աղաչեալ զՄլեհ գալ խօսել 'ի հաչտութիւն. և իբրև չառնոյր նա յանձն՝ մխեցաւ և ինքն թագաւորն ընդ այլոց նիզակակցաց 'ի վիճակ Մլեհի՝ 'ի դաչտակողմն, զանգիտեալ 'ի լե-

1 Ըստ Ապուլֆարաճայ։

2 Լը Պօ, ԺԶ, 505։

րանցն և 'ի լեռնականէն. իսկ սա անդէն ազդ արարեալ Նուրէտտինայ, համբաւով գալստեան նորին պակուցեալ յետս դարձոյց զյարուցեալսն 'ի վերայ իւր: Եւ ինքն խրախուսացեալ խիզախեաց արշաւել յերկիր Թագաւորութեան Երուսաղէմի. բայց փութացեալ արխայանացն Հիւրընկալ ասպետաց՝ զառաջս առին և կասեցուցին զնա (1172): Դարձոյց ապա զզէնսն ընդդէմ անհաշտելի ատելեաց իւրոց Յունաց, և վանեալ 'ի քաղաքաց՝ որք մնացեալ էին տակաւին 'ի ձեռս նոցա, նուաճեաց զՏարսոն և զԱտանա և զՄսիս, որ է ասել զբովանդակն Կիլիկիա: Արտմտեալ Մանուէլի՝ զի յետ այնքան ճգանց ոչ յաջողէր 'ի բուռն ունել զկլիրծուան Կիլիկիա, առաքեաց 'ի վերայ Մլեհի երիս զօրավարս ծանօթս, և երբեմն վերակացուս քաղաքացն, այսինքն Միքայէլ Վռանա, Կոստանդին Եւփորպեն և Կոստանդին Կալաման կրսերն. եւ ընդդէմ նոցա Մլեհ, (յելս կոյս 1172 ամին կամ 'ի սկզբան 1173), համանօրէն ունելով գունդ օգնական 'ի Նուրէտտինայ, եհար խորտակեաց, և դարձաւ բազում աւարաւ և գերութեամբ. յորոց մասն մի և երեսուն այր 'ի գլխաւորաց գերելոցն՝ առաքեաց առ Նուրէտտին. և սա մասն եհան ամիրապետին Բաղտատայ, և մի 'ի մեծամեծ յաղթութեանց իւրոց հաշւէր զգործն: — Սակայն բերդորայք միայն մնացին 'ի Կիլիկիա ընդ իշխանութեամբ Բիւզանդացւոց. յորոց մի և գլխաւոր էր ամուրն Լամբրուն, յամրագոյն և յերկարագոյն հակառակորդ տանն Ռուբինեանց. ընդ որոյ տեարս ոչ սակաւ քան ընդ այլս՝ ոխացեալ էր Մլեհ, մանաւանդ վասն արձակելոյ սեբաստոսին Հեթմոյ զկին իւր՝ զդուստր Թորոսի՝ յետ մահուան սորա. « յաղագս » որոյ զայրացեալ Մլեհն՝ գնաց պաշարեաց զօրաք (1173) » զԼամբրունն, և բազում նեղութիւն հասոյց 'ի բնակիչս » նորա... և սաստկապէս նեղէր զնոսա պատերազմաւ » և սովով »: Եւ թերևս մեծագոյն ևս վնասս հասուցանէր նոցա՝ եթէ յերկարելով սովոյն նուաճէր զտեղին. բայց փութացաւ գալ յայնժամ հաշտութեան Գրիգոր Տղայ[1], որոյ և փեսայ գոլ վկայի Մլեհ, (ուրեմն առեալ զմի 'ի դստերաց Վասլի եղբօր Ն. Շնորհալւոյ). և մինչ յայս դեգերէր եպիսկոպոսն՝ եհաս առ նա գոյժ փոխման 'ի կենաց սրբոյ կաթողիկոսին՝ հօրեղբօր իւրոյ, և փութացաւ երթալ 'ի Հռոմկլայ. ուր՝ տեսեալ զի ոչ սպասեալ ինքեան և ոչ մտ եդեալ կտակի Շնորհալւոյն՝ զհամշիրակ իւր Գրիգոր Ապիրատ ընտրեալ էին յաթոռն, դարձաւ վերստին առ Մլեհ, և սա առ հաւատարիմ զօրաւիգն իւր՝ Նուրէտտին. և յաջէ սոցին և 'ի պաշտպանութեան կտակի Սրբոյն՝ կարգեցաւ ինքն Գրիգոր Տղայ 'ի կաթողիկոս, և Ապիրատին խոստացեալ եղև ըստ նախասահմանելոյն՝ յաջորդել նմա:

Յետ երկուց ամաց (1175) ոչ ևս հանդուրժեալ իշխանաց և զօրաց Հայոց՝ զզուանացն Մլեհի, դաւաճանեալ սպանին զնա 'ի քաղաքն Սիս, որ՝ յայսմ անբարի առթի երևի յարդարեալ 'ի նմին իսկ Մլեհէ, առաջին բնակել և բնամահ եղելոյ յայսմ հարստութեան Հայոց: Թաղեցին զնա 'ի Մեծքար վանս՝ յիւր դաստակերտն. յորմէ երևի զի չէին չնջեալ խպառ 'ի մտայլ ոգւոյն՝ կրօնական խնամք, թէպէտ և չէ յայտ ժամանակ շինութեան վանացն: Եւ զի, որպիսի ոք և էր՝ քրէական եղեան համարէր սպանումն նորա, Ռուբէն Բ որ յաջորդեացն զնա, ճարտարութեամբ գտեալ զսպանիչսն պարծեցողս իբրև երախտաւորս, զՋահան զոմն և զԱպլղարիպ ներքինի, վէմ ընդ պարանոցն կապեալ՝ գետամոյն արար:

Այս Ռուբէն որդի էր Ստեփանէի եղբօր Մլեհի և Թորոսի, զոր մայր իւր Ռիթա՝ դուստր Սմբատայ տեառն Պապեռոնի, 'ի ժամանակի բռնակալութեան Մլեհի՝ կրտսերաւ որդւով իւրով Լեւոնիւ զերծոյց առ եղբայր իւր Բակուրան, և անդ սնուցանէր զնոսա, որպէս ասէ Պատմիչն, գովելով զերկոսին ևս, և զմայր նոցին. « զի էր » բարեպաշտօն և իմաստուն կինն այն, և երկեղած 'ի » Տեառնէ ». որպէս և եղբայրն՝ տէրն Պապեռոնի՝ « էր » այր բարի և առատ, և բարեբարոյ առ ամենայն ոք, և » սիրելի Աստուծոյ և մարդկան »: Որ և յետ սպանման Մլեհի՝ 'ի խնդրել իշխանացն՝ անդանդաղ առաքեաց ըզՌուբէն հանդերձ « բազում գանձիւք ոսկւոյ և արծաթոյ », ոչ յիշելով զի հայր իւր Սմբատ սպանեալ էր 'ի մարտին որ ընդդէմ Թորոսի հօրեղբօր նորա: Մեծաւ խնդութեամբ և օրինական հնազանդութեամբ ընդունելի եղև Ռուբէն յիշխանացն Հայոց. քանզի, ըստ Պատմչին, « էր սա երիտասարդ բարեմիտ և առատաձեռն, տես» լեամբ գեղեցիկ, ամաց երեսուն, 'ի զինուորութիւնս » արիագոյն, և աջողակ 'ի նետաձգութիւն. և սկսաւ տալ » պարգևս ամենեցուն առատապէս. և ժողովեալ զգանձս » Մլեհին՝ սկսաւ սփռել 'ի պէտս և յանպէտս, և առա» տապարգև սեղանով զամենեցուն սիրտ և զոգի յինքն » հանգոյց. և ուր դիմէր նոքօք՝ քաջապէս մղէր զհոյլս » թշնամեաց. որով էառ զՄսիս, զԱտանա և զՏար» սոն »: Յայտ ուրեմն 'ի բանիցս լինի՝ եթէ դարձեալ միանգամ անկեալ էին քաղաքքդ Կիլիկիոյ 'ի ձեռս Յունաց, բայց ոչ այրդեալք 'ի մագլաց Մլեհի, այլ կամօք և դաշամբք ինչ տուեալ 'ի նմանէ առ Անտիոքայ իշխանն, որպէս վկայեալ է այս վասն Տարսոնի. դարձեալ և այն, զի վասն հեռաւորութեան քաղաքին յիւրմէ աստանէն՝ ոչ կարելով Անտիոքացւոյն պահել զայն զիւրաւ, յամի 1182 ինքնակամ վաճառեաց Ռուբենի՝ ծանր գնով. և յայսմ հետէ ոչ ևս վրիպեցաւ 'ի ձեռաց Հայոց, այլ 'ի յասայ Յունաց. որոց զվերջին հրաժեշտ տուեալ՝ ընդ անուանեալ կոմնենականն Կիռ Սահակայ՝ մեկնեցան 'ի բաց. սոքա գնալով 'ի Կիպրոս, այլոց՝ այլուր, և յոլովից մնալով 'ի քաղաքին՝ որպէս և յայլ քաղաքս և 'ի սահմանս նոցին՝ ընդ իշխանութեամբ ձեռին Հայոց: Մերձաժամանակ պատմիչք ասեն վասն Սահակայ՝ յամի 1183 խիզախեալ ընդդէմ սուլտանին Իկոնիոնի. իսկ Ռուբենի կանխեալ քան զդաշնակից զրացին այլազգի, վանեալ մարտիւ և կալեալ զՍահակ՝ մատուցանել սուլտանին. իբրև ոչ կամեցաւ սա ընդունել, Ռուբէն ետ զնա 'ի ձեռս Բրնձին՝ ընդ որում ունէր ինչ

1 Զի յայս համարիմ ակնարկել ժամանակակից յիշատակագրի՝ յասելն. « Եւ վասն որոյ երթեալն էր (Գր. Տղայ), համոզել 'ի խաղաղութիւն 'ի մէջ երկուց սոփէլանաց, զայն 'ի բաց տային թողուլ, և բերեալ կացուցին յանառիկ ամրոցն Հռոմկլայ »:

*խէթ, և հաշտեցաւ այսու[1]. Թէպէտ և Սահակ խնամի իւր էր, ունելով կին զդուստրն Թորոսի։*

*Ցետ ամաց՝ զվերջին փորձ փորձեաց հին ոսոխն Հայոց՝ վատչուէրն Անդրոնիկոս, բռնակալեալ այժմ (1183) ըղկայսերականն գահ. և գաղտ բանագնաց լեալ ընդ գոռ Փրղին Սալահէտտինայ՝ նուաճել զԽլոնիոն և զԿիլիկիա, մինչև ինչ գործեալ՝ սպանաւ յիւրոցն, և ջնջեցաւ 'ի դիւանաց և 'ի մտաց Բիւզանդացւոց թեմն Կիլիկիոյ։ Այսու աղագաւ ինքնագլուխք իմն եղեն և Հեթմեանք տեարք Լամբրունի, ընդ որոց մախայր և Ռուբէն, ըստ հարցն օրինի. և անդէն 'ի սկզբան պայազատութեանն՝ եկն 'ի վերայ ամրոցին, և զամս երիս նեղէր պաշարմամբ և սովով, այլ ոչ կարաց առնանել. մանաւանդ զի և այլ հոգք 'ի վերայ հասանէին նմա. որպէս երբեմն ('ի վերջ կոյս 1180 ամի) հզօրն Սալահէտտին յետ յաղթութեանն յԽլոնիոն՝ դարձոյց զերեսս իւր յերկիր Ռուբինի. զի և այսպէս կոչէր յայնժամ Կիլիկիա. փոխանակ զի, ասեն արարացի պատմիչք, թոյլ տուեալ նորա Թուրքման տոհմի միոյ արածել յարօտս երկրի իւրոյ, և ապա դաւաճանեալ կապուտ կողոպուտ արար։ Արդ մտեալ Սալահէտտինն 'ի սահմանս Հայոց, և տեսեալ զամրութիւն լերանցն՝ զկայ էառ յեզեր դաշտին, և ասպատակ սփռեաց ընդ այլ և այլ կողմանս. կասկածեալ Ռուբինի թէ ակն եդեալ իցէ այլազգւոյն առնուլ զմի յամուր բերդիցն՝ յորում եդեալ էր զգանձս իւր, առաքեաց կործանել զայն. այլ մինչև բարձեալ զգանձսն՝ 'ի վերայ հասին այլազգիքն. յայնժամ զիջաւ Ռուբէն թողուլ դարձուցանել յետս զաւար Թուրքմէնիցն և զգերեալսն, և այսպէս հեռացոյց զմեծն զայն աշխարհակալ[2]։*

*Զայնու ժամանակաւ (1181) խնամութիւն արար Ռուբէն ընդ Լատինս, առեալ իւր կին զԻզապէլ՝ դուստր Հըմֆրեայ տեառն Քարաքայ և Թորոնի, ինքնին երթալով յԵրուսաղէմ, և բազմածախ հանդէս հարսանեաց առնելով, և բերելով զկինն. յորմէ եղեն նորա դստերք երկու, Ալիծ և Փիլիպպինէ, անուանիք 'ի պատմութեան, մանաւանդ առաջինն, որ և պատճառ երկար քաղաքական դիպաց յաւուրս տէրութեան Լևոնի, և յետոյ ևս։ Սովիմբ աճեաց և ևս ընտանութիւն Լատինաց ընդ տանն Ռուբինեանց և ընդ ազգիս Հայոց[3]. որպէս զի բազումք յիշխանաց նոցին հալածելոց կամ զժտելոց ընդ թագաւորին Երուսաղեմի՝ եկեալ յարէին 'ի Ռուբէն։*

*Իսկ սորա անդորրացեալ արդ ամենուստ և սիրեցեալ յամենեցունց, սկսաւ տարածանել և ինքն զսէր իւր յանպատշաճս. և «այնր աղագաւ, ասեն, գնաց յԱնտիոք. » և Բրինձն Պեմունդն կալաւ զնա (1185) և եդ 'ի բան- » տի », անխիղճ իմն սովորութեամբ ժամանակին, դաւել զհիւրս և զբարեկամս իսկ, և կծել ինչ 'ի նոցանէ. այսպէս և սա պահանջէր զսահմանակից Անտիոքայ զերկիրն որ 'ի ձախակողմն Ջահան գետոյ. և Ռուբենի գրեալ առ քեռին իւր Բակուրան՝ և առ եղբայր իւր Լևոն, ետ բերել զմայր իւր և զայլս ոմանս յազգայնոցն տալ 'ի պատանդ. և ինքն արձակեալ՝ ետ 'ի Բրինձն զբերդորայսն ինչ խնդրեալս 'ի նմանէ (Թիլ, Սարուանդիքար և Ճկեր), և հազար դահեկան ևս ոսկի 'ի փրկանս, և դարձոյց յետս զպատանդսն. որպէս յետ սակաւուց թափեաց և զբերդերն՝ ինքնին կամ 'ի ձեռն Լևոնի. բայց ասեն սադրանօք տեարց Լամբրոնի արարեալ զայս Բրնձին, զի ոչ դադարէր Ռուբէն 'ի նեղելոյ զնոսա. նա և մինչ 'ի կալանսն էր՝ ազդեաց գաղտ առ եղբայր իւր Լևոն, մի՛ դլալ, այլ պնդել զպաշարումն բերդին. զնոյն անշուշտ և ինքն արար յետ դարձին 'ի գերութենէն՝ առ մրմուռ, այլ ոչ խաղաղ վարակեալ 'ի նոյն կիրս. քանզի յառաջ քան զմօտալուտ վախճան կենացն (1187) զգաստացեալ և զղջացեալ 'ի վերայ չուայլութեանցն, խնդրեաց ներումն և 'ի Հեթմեանց՝ վասն քինուն և տառապանացն. և յանձնեալ 'ի Լևոն զիշխանութիւն իւր և զդստերսն, հայրաբար ևս իմաստութեամբ խրատեաց խնամել և վարել զաշխարհն՝ զոր արդէն ընդարձակեալ էր, և ակն ունէր 'ի ձեռն նորա և ևս ընդլայնել և կայկայել, գիտելով չափ զզօրութիւն հանճարոյ նորա և զարիութեանն. և ապա հանգոյն հօրեղբօր իւրոյ Թորոսի՝ արկեալ զիւրեաւ զգեստ կրօնաւորական՝ հրաժարեաց յաշխարհէ և 'ի կենաց, և հանգեաւ առ նմին 'ի քնարանս Դրազարկու[4]։*

*Այսպէս յետ դարական տատանման և բռնաբարութեան Կիլիկիոյ՝ մանաւանդ Դաշտայնոյն, 'ի ձեռաց Յունաց, Հայոց, Փռանկաց, երբեմն և այլազգեաց, խաղաղացաւ ընդ բարձրացեալ բազկաւ Լևոնի և յաջորդացն, իբրև դար մի ևս ըստ բոլորին, և սուղ ինչ պակաս՝ դար մի ևս ըստ մասին. իսկ լերինքն յարատևակ անքոյթ կալուածք եղեն նոցին։ Լևոն ընդարձակեաց զսահմանս իշխանութեանն անդր քան զԿիլիկիա և զԻսաւրիա, և վասն այսր և վասն խաղաղ խափանելոյ այնուհետև նախնի յունական բաժնից փոքուն Ասիոյ և զաւառաց միոյ միոյ աշխարհացն, հարկ էր պատշաճեցուցանել երկրի և մասանց իշխանութեանն Հայոց՝ այլ անուանս, որպէս և պատշաճեցան պէսպէս կոչմամբ, յորոց և մեք ընտրեսցուք զոր պատշաճագոյն դատիմք։*

*Ցանկալի էր գիտել զօրէնս և զհրահանգս վարչութեան պայազատաց Ա դարուն Ռուբինեանց, զորոց տեսաք յաւէտ զքաղաքական և զպատերազմական գործս. որչափ ինչ հեղինակութիւն էր նոցա 'ի վերայ ազնուաց և ռամկաց ազգայնոց, և որպիսի՛ չուք 'ի սոցանէ առ նոսա ընծայիւր։ Պակասեն մեզ յիշատակարանք ժամանակին, կամ յոյժ նուազունք 'ի ձեռս մեր հասին. յորս ('ի գիրս գրեալս առ նոքօք) գիտեմք միայն զպատուոյ կոչումն նոցա՝ Իշխան[5], երբեմն յաւելադրութեամբ Մեծ կամ*

1 Bernard. Petroburg. — Լը Պօ, Չ, 351։

2 *Այսպէս պատմեն Արաբացիք, Էպ Աթիր, Ապուլֆէտա, հանդերձ այլովք։*

3 *Առաւել քան զքաղաքականն՝ եկեղեցական մերձաւորութիւն սկսաւ յաւուրս Ռուբինի. զի առ նովաւ յամի 1184 Լուկիոս Գ Պապ գրեաց թուղթ առ Գրիգոր Տղայ կաթողիկոս մեր։*

4 *Այս Ռուբէն թուի † 'ի 6 մայիսի, 1187 ամի. քանզի յարքունական Ցայսմաւուրս վախճան Ա Ռուբինի գրի յամսամուտն մայիսի. ապա 'ի վեց նորին գրի. «հանգեաւ քաջ և յաղթող Պր. » Ռուբէնն, ազգականն թագաւորին Գագկայ», յայտնապէս սխալեալ. այն զի ոչ յառաջ և ոչ յետոյ այլ ոչ ուրեք յիշի մեզ այս Բ Ռուբէն 'ի նոյն գիրս։*

5 *Այսպէս կոչին 'ի յիշատակարանս մատենից գրելոց, յամի 1137՝ Լևոն Ա, 'ի 1155՝ Թորոս Բ, 'ի 1182՝ Ռուբէն Բ, 'ի 1193՝ Լևոն Բ։ Իսկ գրիչ ոմն յամի 1217 առ Լևոնիւ թագաւորաւ, զեղբայր նորին կոչէ Մեծն Ռուբէն։*

Բարեպաշտ. ոչ գտաք 'ի ժամանակակցացն կոչեալ զնոսա՝ Պարոն, այլ 'ի յետին գրողաց, որ զաւլորեալն զայն յեւրոպականաց պատուանուն առ իւրեամբք՝ ընծայեն և նախնեացն։ Առաջին ծանօթք Ռուբինեանց արեւմտեայք՝ մերթ սոսկ Լեռնային կոչեն զնոսա, որպէս ցուցցի 'ի ստորև, և մերթ Իշխան, Princeps, որպէս կոչէ յաճախ մեծ պատմագիրն խաչակրաց Գուլիելմ Տիւրոսի եպիսկոպոս, գրեաթէ միշտ յաւելով և զմեծազօր մակդիր, potentissimus, և վասն Թորոսի Բ, և վասն Մլեհի[1], և վասն Ռուբինի Բ[2]. կամ ամենամեծ իշխան կոչէ. ուրեք և Սատրապ, որ է ըստ մեզ Նախարար. զոր օրինակ վասն Բ Ռուբինի ասէ[3]. Rupino Armeniorum Satrapæ potentissimo. զնոյն և այլուր հասարակօրէն վասն Հայոց և Թուրքաց իշխանաց։ փռանկ Թարգմանն կամ Պատմիչն Հերակլի անուանեալ՝ Տէր Հայոց կոչէ. Rupin, *Seigneur* d' Ermenie. կամ Սիր, Toros, qui Sires estoit d' Ermenie[4]. – Հաւատարիմքն կայսերաց պատուեցան (որպէս տեսաք) Սեբաստոս կոչմամբ, և յաւելուածով իսկ Պռոտոսեբաստոս[5]. և ոչ միայն կայսեր, այլ երբեմն և Անտիոքայ Բրնձաց ղեկք կամ սպասարկուք համարէին տեարք երկրիս. այնու՝ զի արեւմտեայ իշխանքն Խաչակիրք նախ տիրեցին քաղաքաց Կիլիկիոյ և ետուն յիշխողն Անտիոքայ, և բազում անգամ խսկապէս իսկ իշխէին ուքա՝ մանաւանդ մայրաքաղաքին Տարսոնի. և այս օրէնք կային տակաւին և 'ի վախճանիլն Ռուբինի Բ և 'ի սկզբան պայազատութեանն Լեւոնի, որ թօթափեալ զամենայն ստորակարգութեան հեթեթանս, արեւմտեան ինքնակալին լիճ կարգեաց զինքն։ Բայց զի և Նախորդք իւր տիրագլուխք ալքայաբար պերճութեամբ վարէին, ընդ այն չէք երկբայել. առ որ երաշխաւորեն 'ի հեռուստ և խնամութիւնք նոցա ընդ իշխանազունս արեւմտեայց, մեծաճոխ պաշտպանականքն տուեալք 'ի հարսնութեան որդւոց և դստերաց իւրեանց, երբեմն և հարուստ փրկանք անձանց՝ յըմբռնիլն դաւով։ Իսկ աղբերք ճոխութեան կամ գանձու նոցին՝ երեքին, նախ, կողոպուտ թշնամեաց և տուգանք գերելոց. երկրորդ, հարկ 'ի հնազանդելոցն, որոյ որպէսն և որքան՝ անյայտ է. և երրորդ՝ բաժն յանցս պահակաց լերանց և գետոց ոմանց. այսոքիկ և յապայն առ Թագաւորօք՝ առաւել յորդութեամբ՝ եղեն անհատահոս ծորանք գանձուց նոցին, սնուցիչք և պահպանիչք պետութեանն 'ի բազմադէմ աղէտսն իսկ և 'ի կոխան լինել աշխարհին 'ի թշնամեաց։

Այլ բաւականասցի մեզ այսքանս 'ի ծանօթութիւն նուաճմանն Կիլիկիոյ 'ի Հայոց, և պայազատութեան Ռուբինեանց՝ մինչև 'ի Լեւոն Մեծ, որ զգայթ 'ի գայթի տէրութիւնն բարձրացոյց 'ի հաստատուն թագաւորութիւն, ամենայն արքունական շքով և հրահանգօք, և սեփականեաց աշխարհին զանուն Հայաստանեայց։

16. ԱՆՈՒՆ ԵՒ ԲԱԺԻՆՔ ՀԱՅԿԱԿԱՆ ԿԻԼԻԿԻՈՅ. — Ի գրաւել Հայոց զամենայն երկիրն Կիլիկիոյ՝ հասարակօրէն նովին նախկին անուամբն կոչէին զայն, բայց ըղտեղանիշն պէսպէս բառիւք. որք եթէ ընդարձակ և եթէ անձուկ սահմանս նշանակիցեն, սակայն նոքա զամենայն 'ի մի միտս առնուին, զուն ուրեք կոչելով սոսկապէս ԿԻԼԻԿԻԱ կամ ԿԻԼԻԿԻԱՅՔ. այլ զոյգ տեղականաւն՝ ԱՇԽԱՐՀ կամ ԵՐԿԻՐ ԿԻԼԻԿԻՈՅ, և ըստ հին ոճոյ ՏՈՒՆ ԿԻԼԻԿԻՈՅ, ՆԱՀԱՆԳ ԿԻԼԻԿԻՈՅ կամ ԿԻԼԻԿԵՑԻՈՑ ՆԱՀԱՆԳ. այլ և ԳԱՒԱՌ ԿԻԼԻԿԻՈՅ, որպէս գրէր 'ի հնումն և Ղազար Փարպեցի։ Երբեմն անուն արքայանիստ քաղաքին փոխանակէր զԿիլիկիայն. որպէս և բառակարգ աշխարհագիր մի մեր ասէ, « Կիլիկիա՝ ՍԻՍ է, իւր գաւառօքն, կից » Ասիայի ». Թուի թէ Խաւրիայի կամէր ասել։ Այսպէս կոչեն և յոտարաց՝ Արաբք և Ասորիք ոմանք. զոր օրինակ Ապուլֆարաճ, ՊԻԼԱՏ-ԷԼ-ՍԻՍ بلاد السيس, կամ Պիլատի Սիս بـلاد سيس. իսկ կաթողիկոս մեր Գրիգոր Տղայ՝ Թերևս առ 'ի լնուլ զժամանակ չափական բանիցն՝ յերկարելով զփոքրիկ անունն՝ գրէ ՍԻՍՈՒԱՆ.

« Ապա ընդ լեառըն Տաւրոսին՝
Մըտին յաշխարհըն Սիսուանին ».

Ցայս անուն՝ նուիրական համարեալ և 'ի կաթողիկոսէն մեծէ և 'ի շնորհաց Սսոյ՝ կնքեցի և ես զտեղագրութիւնըս. Թէպէտ մարթ էր կոչել պատշաճապէս և Կիլիկիա-Հայք կամ Հայակիլիկիա, որպէս և գտանի իսկ կոչեցեալ 'ի Յունաց ժամանակին՝ Արմենոկիլիկիա, 'Αρμενοκιλικία[6]։ — Ի հաստատել տէրութեան մերայոցս և 'ի հնչակել ամենայն ուրեք, սովորութիւն եղև օտարաց անխտրաբար ՀԱՅԱՍՏԱՆ կամ ԵՐԿԻՐ ՀԱՅՈՑ կոչել, Armenia, Terra Armeniorum, ՊԻԼԱՏ-ԷԼ-ԱՐՄԷՆ, بلاد الارمن ըստ Արաբաց. որոց և ծանօթագոյն էր սա յայսմ ժամանակի, առանձնակ տէր և Թագաւոր Հայ ունելով, քան Մեծն Հայք՝ որ ընդ օտարաց ձեռամբ. այլ հմուտքն և յայնժամ յորոչումն նորին՝ կոչէին զԿիլիկիա՝ ՓՈՔՐ ՀԱՅՔ, ոչ ինչ գիտելով կամ յիշելով զբուն Փոքր Հայս՝ որ յաջմէ և յարեւմտից Եփրատայ են և 'ի հիւսիսոյ Կիլիկիոյ։ Աղուականն ևս է կոչումն երկրին յառաջին ժամանակսն, մինչև էր տարածեալ իշխանութեան Ռուբինեանց 'ի դաշտավայրն. քանզի լեռնական մասանցն տիրէին, իշխողք լեռանց կոչեցան՝ իբր յատուկ անուամբ. այսպէս երրայեցի ճանապարհագիրն Բենիամին Տուդելացի՝ որ յամի 1163 էանց ընդ սահմանս տէրութեան Թորոսի Բ՝ Թագաւոր լերանց կոչէ զնա, նոյնպէս և Լատինք՝ Լեռնականս կամ իշխողս լերանց, De Montanis. Պրոմդոն պատմագիր վասն Փրեդրիկայ կայսեր ասէ փռանկ բարբառով, եկեալ յերկիր Ռուբինի Լեռնականի, In terram Rupini de la Mountagne. նոյնպէս և Բեռնարդ Պետրոպուրկեան[7], Rupinus de Monte, և զերկիրն Terra Rupini de la Muntaine. այսպէս գրէր և Կլեմէս Գ քահանայապետ Հռովմայ (յամս 1187-8), որպէս և Թարգմանէ զԹուղթ նորա

---

1 Գուլ. Տիւր. ԺԸ, 10. 17. 23։ — Ի, 25. — ԻԲ, 24։
2 Նոյն Ի. 26։
3 Նոյն ԻԲ. 24։
4 Histoire d' Eracle, ԻԵ, 19։
5 Թէպէտ և մի յաւագագունից պատուաւորաց էր Պռոտոսեբաստոս (ὁ Πρωτοσέβαστος) 'ի դրան կայսեր, ոսկեղէն ունելով խոյր և պատմուճան կանաչ, այլ պաշտօն ինչ ոչ ունէր։
6 Եփրեմ Մոնաղն 'ի տաղաչափեալ Պատմութեան Կայսերաց Բիւզանդիոնի, տող 3904։
7 Ի վերա Հենրիկոսի Բ, Թագաւորի Անգղիոյ։

մերս Լամբրունացի, ԼԵՒՈՆԻ ԼԵՌՆՑՒՈՑ. զի չև ևս էր թագաւորեալ սորա. և յայսմ միջոց ժամանակի սոյն ինքն արծիւն լամբրունեան՝ քաջասուր աչօքն նկատելով զօրըստորէ բարգաւաճել սորա, ոչ կարէ միով անուամբ սահմանել՝ զոր նոյն գինուքն անսահմանաբար ընդարձակէր. և մերթ[1] ասէ, «Պարոն մեր Լևոնն՝ որ 'ի սոյն ժամանակս էր իշխող ԿԻԼԻԿԻՈՑ և ՍԱՒՐԻՈՑ և ԼԵՌԱՆՑ սոցին». և մերթ (յամի 1196) «Որ 'ի ԿԻՒԼԻԿԵՍԱՑՍ և Ասորւոց գաւառացն տիրէ.. և Երկրորդ Կապադովկիոյ, յորում մայրաքաղաք Տիանա»[2]: Ցայտ է զի և նահապետ տոհմին Ռուբէն, ըստ վկայելոյ պատմչաց և յիշատակագրաց, նախ առաջին տիրէ լեռնակողմանցն փռիւգիոյ[3]: Ականատեսն և հիւր Լևոնի գիտնական կանոնիկոսն գերմանացի Վիլլէպրանտ՝ յայտնապէս ասէ վասն նորա, մինչև 'ի թագակապելն կոչիլ Լևոն Լերանց կամ Լեռնականաց (տէր), Leo de Montanis, և յետ այնր՝ թագաւոր Հայոց: Ոչ միայն յանուն լերանց՝ այլ և ընդ մէջ նոցուն անձուկ կրճիցն և անցից՝ գտանեմք առ Արաբացիս կոչեալ զաշխարհս մեր՝ Երկիր անցից, Պիլատ-ալ-Տօռուզ بـلاد ال دروب[4]: — Այլ սեփականագոյն միանգամայն և պանծագոյն կոչումն երկրին ընծայէին եկք և օտարք՝ զանուն քաջայաղթ տիրողացն. ըստ այսմ տեսաք 'ի վեր անդր ԵՐԿԻՐ ՌՈՒԲԻՆԻ, Terra Rupini, կոչեցեալ, նոյնպէս և այլոց «Զկիլիկեայ անուն լքեալ, ըստ ասից յիշատակագրի, ԹՈՐՈՍԻ (Բ) ԵՐԿԻՐ զաշխարհն նորին վերածայնէին». զոր օրինակ և վերոյիշեալ Հռեայ գրիչն՝ ասէ մտեալ յերկիր իշխանութեան Թորոսի Թագաւորի լերանց. և Վահրամ Րաբուն զնոյն բան չափաբերեալ գրէ,

«Մինչ զԿիլիկիա անուն թողեալ
Եւ Թորոսի երկիր կոչեալ»:

Ըստ այսմ և արժանապէս յետոյ յանուն ընդարձակողի սահմանացն և վեհագունի բնաւիցն իշխողաց՝ կոչէր յարաբացի մատենագրաց ԵՐԿԻՐ ԼԵՒՈՆԻ, Պիլատի Լիվուն, بـلـاد لـيـون, կամ Պիլատ-իպն-Լիվուն-էլ Արմանի, بلاد ابن ليون الارمنى: Այսպէս կոչէ և ժամանակակիցն Մատթէոս Ուռհայեցի 'ի տարեգրութեան 1112 ամին, մինչչև էր իշխեալ և Ա. Լևոնի Պարոնի. ըստ այսմ 'ի դէպ էր և մեզ կոչել ԼԵՒՈՆԱՍՏԱՆ. քանզի և անդր քան զբնիկն Կիլիկիա ձգէր ձեռն իշխանութեան նորա, թէպէտ և ոչ միշտ, ընդ արևմուտս՝ ցԱտալիա 'ի ծոցն Պամփիւլիոյ, ընդ Մ. Հ. ցԱռակլիա և ցՏիանա, զորս նուաճեաց. ընդ հիւսիսի՝ գամ մի մինչև 'ի սահմանս Կեսարիոյ. իսկ յարևելից կուսէ՝ առեալ զԱրասուս և ըղՊաղրաս, ամփոփելով զամենայն ոլորտս Խաչեան Տորոսոյն, մինչև 'ի Սեաւ լերինս՝ ոգիմբք հանդերձ, որ է Ամանոսն. և այս յետին սահմանք մնացին յիշխանութեան յաջորդացն ցդար և կէս, մինչ արևմտեայքն և հիւսիսայինք՝ որք արտաքոյ պատուարաց բնալերանցն՝ առ փոքր փոքր գրաւեցան 'ի Թուրքաց և 'ի Գարամանաց: Ցիշեցաք զԲենիամին Գուտելայ հրէի բանն, որ՝ առ Բ Թորոսիւ սկիզբն սահմանաց երկրի նորա գրէր զԿոռիկոս, և զեզրն՝ Գուքիա քաղաք, հաւանօրէն Անտիոք, զի և Hadochie փոխադրեն ոմանք զգրածն: Վիլլէպրանտ յամի 1211 գալով 'ի Կիլիկիա՝ յաւուրս զօրութեան Լևոնի, զլայնութիւն երկրի նորա որ 'ի միջոցի լերանց՝ երկօրեայ ճանապարհ գնացից համարի, իսկ զերկայնութիւնն՝ վեշտասան աւուրց գնացս, հաւանօրէն յարևելից յարևմուտս՝ զծովակողմն իմանալով: Բեկոլոդդի 'ի կէս ԺԴ դարու, յԱյասայ մինչև ցանծանօթն Կոպիտառ՝ սահմանէ զերկիր Հայոց:

Արդ զի վայել է մեզ ճանաչել և ստորագրել զերկիրս՝ ըստ ժամանակի ընդարձակ իշխանութեանն, պարտ և արժան է ուշ ունել 'ի տէրութիւն Լևոնի՝ վերականգնողի թագաւորութեան Հայոց, 'ի բաց թողլով զառժամանակեայ ինչ կալուածս նորին՝ զքաղաքաց և զգաւառաց, զոր ըստ պատերազմաց և աշխարհակալաց օրինի ագուռեաց, և ոչ յարելով 'ի բնիկ և հաստատուն կալուածսն. ըստ այսմ պատճառի արտաքոյ թողումք տեղագրութեանս և զառաջնոցն քան զնա ոմանց սակաւածանօթ երկրակալութիւնս՝ 'ի կողմանս փռիւգիոյ և Գամրաց, և զնոյն ինքն զկուրոյ յաջորդին զՀեթմոյ Ա, որ 'ի կողմանս Գերմանիկոյ մինչև ցԵփրատ, զորս առաւել 'ի շնորհս և 'ի հաճոյս Թաթարաց նուաճեալ կալաւ՝ քան 'ի պէտս իւր և յօգուտ: — Ապա ըստ այսմ տեսութեան տեղագրելիք մեր լիցին, յարևմտից՝ համօրէն հովիտն Սելևկիոյ գետոյն, և անդրագոյն ծովեզերքն մինչև ցԱտալիա, և ուր ինչ 'ի հիւսիսոյ սոցին լեռնակողմն մինչև ցԱռակլի և ցՏիանա, յորս բովանդակի և Իսաւրիա. և բնալերինքն Տաւրոսի բովանդակ հովտօք արևմտեան օժանդակաց Սարոսի. 'ի հիւսիսոյ՝ լեռնավայր միջագետքն երկոցուն առաջից Սարոսի (Ծամնդաւ և Սառան). և յելից հիւսիսոյ՝ անորոշ գիծ մի սահմանահատ Մարաշայ, թողլով սմա զազբերակունս Ջահանայ, և սեփականելով Սխաւանայ զհովիտն՝ որ յետ գետանալոյ նորին. իսկ յարևելից՝ յայտնի են սահմանքն, Ամանոս լերինք, մինչև ցհռչակաւոր հրուանդանն Ռոս-Խանձիր. յորմէ դառնայ աներկբայ ծովային սահմանն մինչև ուստի սկսաք զցամաքայինն. սակայն և յայսմ յիշելի է զոր 'ի սկզբանն ասացաք, թէ ոչ միշտ մինչև ցԱտալիա ընդ արևմուտս, այլ մինչև յԱնամուռ ձգէին ծովային սահմանք այնր կողման, և 'ի ժամանակի ճանապարհորդութեան Գուտելայցւոյն՝ ցԿոռիկոս. բայց յարևելից կողմանէ՝ մերձ 'ի կէս ԺԴ դարու, որ է ասել 'ի ժամանակի նուազման իշխանութեան մերոյս՝ գետաբերանն Ջահանայ եղև սահմանագլուխ, և համօրէն Ծոցն Հայոց կամ Խաչեան՝ մարզ եկաց եգիպտական սուլտանութեան:

17. Այսքան վասն անուան և սահմանաց երկրին՝ որ առ մերայոցս հարստութեամբ. իսկ յորքանս և յորպիսիս առ սոքօք տրոհէր գաւառս կամ վիճակս. — ոչ ուրեք գտանեմ և ոչ իսկ 'ի հարևանցի նշանակեալ. և յայժ ադ-

1 Ի Թարգմանութեան վերոյիշեալ Թղթոցն:

2 Ի յիշատակարանի Թարգմանութեան Օրինագրոց:

3 Սոյն յիշատակագիր Ճարտարաբան և վասն Բ Թորոսի նորոգ վերականգնողի տէրութեան Ռուբինեանց՝ ասէ. «Տիրեաց նախ Վահկային և ամենայն փռիւգիոյ, և յետ սակաւուց՝ Անարզաբայ»:

4 Իբն Ածիր պատմագիր 'ի սկիզբն ԺԳ դարու այսպէս կոչէ զՄլեհ որդի Լևոնի Հայոյ՝ տէր երկրին Անցից. ملـيج بـن ليون الارمنى صاحب بلاد الدروب

քատ մարթի ասել գաւառագրական անուանակոչութիւն երկրին կամ գլխոյ, խմա զգիւղից և գաւառաց. զի թերևս աւելի քան զհասարակ չինից գտանին 'ի մնացորդս գրոց՝ անուանք վանորէից և մանաւանդ բերդորէից. և թէպէտ մարթ է բերդի անուամբ հաշուել և ըզգիւղս բնակութեանն՝ մանաւանդ 'ի լերինս, սակայն և մեծագոյն և գլխաւորական մասն երկրին գաւառային է. և որպէս յիշեցաք ուրեք, երեքհարիւր գեօղք և զարդիս իսկ ասեն լինել աստանօր. որքան աւելի հարկ էր գոլ առ մերովքս. սակայն հազիւ քանի մի տասնեակ գեօղից անուանք հասեալ են մեզ յայնցանէ. իսկ գաւառաց, զոր խնդրեմք մեք 'ի ժամուս, աւելի քան զայնս (գեօղս) կարեմք ասել, թէ և ոչ ճշգրիտ սահմանօք, մինչև ոմանց անյայտ գոլ առ 'ի մէնջ դիրք: Մարթ է գլխաւոր նշանակ գաւառաց համարել նաև զթեմս եպիսկոպոսաց, որ թէպէտ յաճախ ըստ սովորութեան այնր ժամանակի՝ յանուն նշանաւոր վանաց՝ նստոցաց նոցին՝ կոչին, այլ բազում անգամ ևս ընդ նոյին և քաղաքքն յիշին, և յայտ առնեն զի ոչ լոկ մենաստանի միոյ՝ այլ ընդարձակ թեմի և գաւառի էին տեսուչք:

Արդ ըստ այսոցիկ երկուց օրինակաց՝ գտանեմ անուանս կամ բաժինս գաւառաց իբրև երեանից. և են այսքա, սկսեալ յարևմտից. ՍԵԼԻՆՈՆԴ, որ թէպէտ և 'ի քաղաքական պատմութեան ոչ յիշի, այլ վկայի և յառաջ քան զնուաճումն կողմանցս 'ի Ռուբինեանց՝ լինել եպիսկոպոսանիստ Հայոց՝ 'ի վերջ կայս Ժ դարու. - ՍԵԼԻԿԻԱ, զոր մարթ է և ԽՍԱՒՐԻԱ կոչել յանուն հին աշխարհին կամ նահանգին, զի մերթ յայս մերթ յայն անուն կոչին եպիսկոպոսք թեմին. բայց զի ընդարձակ է երկիրն՝ հարկ է թէ և այլ և այլ վիճակք և գաւառակք էին 'ի նմին, որպէս և յայժմուս ըստ նախանշանակելոյս (յէջ 37), իսկ 'ի նահանգ որ զսոցա տեղին ունի՝ կատարեալ է յայլ և այլ մանր վիճակս. հարկ է թէ և այլ ծովեզերքն՝ մանաւանդ ուր հզօր ամրոց ինչ կայր՝ ունէին և առանձնակ վիճակս. օրինակ իմն Կոռիկոս, որոյ յառաջին դարս՝ առ Յունօք էր եպիսկոպոս, և առ մերովքս՝ տեարք նորին փափաքէին զնոյն հաստատել: — Մտեալ 'ի բնիկն Կիլիկիա, յարևելից Սելևկիոյ նախ առաջին և երբեմն հանուրց վեհագոյն՝ է թեմ և գաւառ ՏԱՐՍՈՆ, որ և Նաւանց ասի 'ի մերոց և յօտարաց. քանզի եկեղեցական գլուխ ունէր մետրապոլիտ, ընդ որով բազում եպիսկոպոսունք կային, և ըստ քաղաքականին՝ յաւուրց անտի Առաքեստանեայց գլխաւոր էր ամենայն քաղաքաց Կիլիկիոյ: — ԼԱՄԲՐՈՆ, որ երբեմն բերդ լոկ, 'ի մերոցս մեծացաւ ըստ քաղաքականին և եկեղեցականին, մինչև արքեպիսկոպոս ունել տեսուչ. և յիշատակագրի միոյ յելս ԺԲ դարու գրել նմին և արտաքին գաւառս, որոց իշխէին եղբարք գերահռչակն Ներսիսի, մինչ անդրանիկն Հեթում նստէր 'ի բուն աստանին՝ 'ի դղեակն Լամբրուն. մարթ է յարտաքին գաւառսն իմանալ և զԳաւառս Կիլիկիոյ, գէթ զարևմտեան հարաւային մասն բարձրաւանդի Կապանին և Դրանցն Կիլիկիոյ: — Սմին սահմանակից է ԲԱՐՁՐԲԵՐԴ գաւառ, զոր և 'ի նոյն գաւառ Կիլիկիոյ ասէ լինել Յովհաննէս Արքայեղբայր. ունէր և սա եպիսկոպոս, սահմանակառ ընդ ՄՈԼԵՒՈՆ. յետինս՝ մասամբ տարածանէր 'ի դաշտակողմն, քանզի և պարզապէս յիշի ուրեք Դաշտն Մուլևոնի. և զի ընդարձակ էր և զրացի նախակարգելոյն՝ ցուցանէ ասացեալն զԱրքայեղբօրէն, թէ էր եպիսկոպոս «ՆՌՀԱՆԳԱՑ (վիճակաց) աստուածապահ դղեկին Մոլևոնի և մասին ինչ Բարձրբերդոյ, և նոյն տեսուչ հաշակելի սուրբ ուխտին Գանևրոյ»: — Ընդ մէջ Բարձրբերդի և Սսոյ են երկաքին եպիսկոպոսական թեմքն ԱՆԴՐԻԱՍԱՆՑ և ՄԵԾՔԱՐԻ, որոց անկ էր ունել և չափաւոր ինչ ընդարձակ վիճակ երկրի: — Ցեկից հիւսիսոյ սոցին՝ ՍԻՍ գաւառ կամ նահանգ, որպէս կոչի ուրեք[1], ունելով յինքեան զքաղաքն թագաւորանիստ, յետոյ և զաթոռ կաթողիկոսի. իսկ յառաջն զարքեպիսկոպոսին, որոյ նիստ էր 'ի Դրազարկ վանս: — Արևելեան կողմն Սսոյ՝ հովիտ Ջահանայ՝ 'ի հարաւոյ Ջեթունի և 'ի Մ. Հր. Մարաշայ՝ որքան 'ի դէպ էր ծանօթագոյն լինել, այնքան և անծանօթ մնայ արդ, անշուշտ վասն լեռնակոհակ գոլոյ և յա[illegible] Թուրքմանաց և 'ի նմանեացն գրաւելոյ, և ոչ գիտեմ ստուգիւ զիարդ 'ի հնումն կոչէր, և որ թեմի վիճակէր. այլ կարծեմ թէ սա էր՝ գէթ մասամբ՝ գաւառն ՑԱԽՈՒՏ կոչեցեալ ուրեք, յորում հաչակաւոր ուխտն Ակներ, գստանկերտ Լևոնի Մեծի. այլ ոչ յիշի առանձինն վիճակ՝ թերևս Սսոյ գոլով բաժին, և թէպէտ յիշի ևս եպիսկոպոս 'ի նմին, այլ ոչ կարծեմ թեմական: — Իսկ հիւսիսակողմն Սսոյ ոչ անմեկին մասն բնիկ Կիլիկիոյ, այլ 'ի ճահ մերոյս այժմեան տեսութեան, ՀԱՃԻՆ վիճակն է, որ թուի կոչեցեալն ՀԱՐԳԱՆ 'ի ժամանակս տէրութեան Հայոց, յորում և եպիսկոպոսական թեմ էր: — Մերձակայ նմին ընդ Հ. Եղ. նորածանօթն ՁԵԹՈՒՆ և ՈՒԼՆԻ՝ նոյն կամ 'ի սահմանի սորին, ոչ յիշի 'ի պատմութեան Ռուբինեանց, և յաւէտ Մարաշոյ կամ Գերմանիկոյ նահանգի պատշաճի: — Միջագետք առաջից Սարոսի, լեռնային բարձրաւանդ Խօզան-օղլուի, և վերագոյն ևս, յանուն արևմտեան գետառաջիցն՝ ԾԱՄՆԴԱՒ կամ ՋԱՄԱՆԴԻ կոչելի են՝ ըստ իս, որոյ չինատեղին էր՝ առ մերովքս թեմ եպիսկոպոսական: — Իսկ հարաւակողմն Սսոյ արևելախառն է ԱՆԱՒԱՐԶԱՑ երկիրն, որ զի երբեմն գլխաւոր էր ամենայն քաղաքաց յետ Տարսոնի, աշխարհ իսկ կոչի, նաև աշխարհաց գլխաւոր, եթէ հաճոյ իցէ ասել ըստ բերման բանի Լամբրոնացւոյն ('ի Մեկնութեան Պատարագի). «Իսկ զԱնարզաբա և զՍիս, և » զորս ընդ նոքօք աշխարհս՝ զինչ ասեմք, որ մինչև ցայսօր » ընդ Հայոց տէրութեամբ են բազում աշխարհօք»: այլ յայտ է թէ զբազմութիւն աշխարհացդ՝ գաւառս և վիճակս փոքունս իմանալի է աստ. բայց թեմն Անաւարզայ ընդարձակ էր և մեծ, և արքեպիսկոպոսանիստ, որպէս և 'ի հնումն առ Յունօք. առ մերովքս աթոռ եպիսկոպոսին հաստատեալ էր 'ի Կաստաղոն վանս: Մի 'ի գաւառաց Անազարբայ յիշի 'ի պատմչէն Կիլիկեցւոց յամի 1110, այսպիսի բանիւ. «Ժողովեցան զօրք Թուրքմանաց » և մտին յաշխարհն Անարզաբոյ և կոտորեցին զքրիստոնեայս գաւառին ՄԱՐԳՍՑՈՑ». իսկ Մատթէոս Ուռ-

[1] « Յաշխարհէն Կիլիկիոյ, 'ի նահանկէն Սսոյ », ասէ զինքն լինել Յովհաննէս ոմն վարդապետ վայելչագրն, յամի 1535:

հայեցի՝ յորմէ առնու Կիլիկեցին զայս բան՝ սակաւ ինչ այլազգ գրէ, եթէ անսղալ իցէ գրածն. «Մտին յաշխարհն » Անաւարզայ և արարին աւար զամենայն երկիրն և ըզ» Մարպայ». այլ նոյն ինքն երկոտասան ամաւ յառաջ փոխանակ Անաւարզայ՝ զայլ աշխարհ յառաջ բերէ, 'ի պատմելն զգալուստ Ա. Խաչակրաց և ազդել Թղթով «Մեծ իշխանին Հայոց Կոստանդնին, որդի Ռուբինայ, » որ ունէր զՏօրոս լեառն 'ի յաշխարհին ԿՈՊԻՏԱՌԱՑԻ 'ի » Մարապայ. որ և բազում գաւառաց տիրեալ էր». ըստ այսց բանից Մարպա կամ Մարապա 'ի հիւսիսային արևմտեան կողմանս՝ և անդր քան զԿիլիկիա խնդրելի է, 'ի սահմանս Փռիւգիոյ, ուր վկայեցաւ զառաջինն տիրել Ռուբինի և Կոստանդնի [1]. և յետոյ ճանաչի Կոպիտառ Թեմ եպիսկոպոսական. բայց յերկոսին ևս բանս Ուռհայեցւոյն՝ անստոյգ միայ և քննութեան կարօտ՝ տեղի և դիրք Մարպայ կամ Մարպայոյ. զարդիս նշանակի գեօղ մի Մարապա անուն 'ի վիճակին Նշլխտանայ 'ի հիւսիսոյ քաղաքաւանին, տեղի՝ որ ոչ պատշաճի և ոչ միոյ յերկոցուն յառաջ յիշեալ գաւառացդ: — Հարաւակողմն Անաւարզայ արևելախառն, որ և հարաւակողմն և ձախակողմն Ջահան գետոյ, 'ի ճահ գայ կոչման ԹԻԼ ՀԱՄՏԸՆՈՑ, թէ և յաճախ բերդն այսպէս կոչի, ընդ մէջ յիշեալ գետոյդ և Ամանոս լերանց: — Յանուն սոցին կամ ՍԵԱՒ ԼԵՐԱՆՑ պատշաճի կոչել զարևելեան հիւսիսային կողմն Կիլիկիոյ, հանդէպ Հայոց Ծոցոյն: Հիւսիսային արևելեան մասն ծովեզերին՝ որ ընդ մէջ Ծոցոյն և Ամանոսի՝ կոչէր ՃԱԿԸՐ գաւառ, գլխաւոր չէն ունելով զՊայաս. հարաւային մասնն՝ ԱՐԱՍՈՒՍ, յանուն հռչակեալ ծովաւանին, որ արդ հանդերձ վիճակաւն Արսուս կոչի: — Արևելեան եզերք Ծոցոյն՝ անհակառակ կոչելի են յանուն մեծահռչակ չահաստան նաւահանգստին ԱՅԱՍ, որ և թեմ էր եպիսկոպոսական առ մերովքս, և առ Յունօք՝ ընդ մետրապօլտաւ Անաւարզայ. և մարթ է համարել զայն տարածեալ մինչև 'ի լերինս Մասայ կամ 'ի Ճէպէլ-էննուր: — Յայտ է թէ որ յարևմուտս սոցին գաւառ՝ էր ՄՍԻՍ, ըստ նախնեաց ՄՈՊՍՈՒԵՍՏԻԱ, և մի 'ի գլխաւոր քաղաքաց աշխարհին, այլ ըստ եկեղեցական հրահանգաց՝ թեմ մի 'ի թեմից Անաւարզայ՝ առ Յունօք. իսկ առ մերովքս՝ մի յաւագագոյն արքեպիսկոպոսական աթոռոց, որոյ նիստ էր 'ի հռչակաւորն Արքակաղնի վանս: — Ի մէջերկրեայս Կիլիկիոյ գլխաւոր և ընդարձակ գաւառ էր՝ որպէս և յայժմուս հանուրց նախադաս՝ ԱՏԱՆԱ, որոյ յիշի և Դաշտ. բայց առ մերովքս չէր այնքան նախապատիւ, և ոչ աթոռ արքեպիսկոպոսական, այլ սոսկ եպիսկոպոսի: — Ընդարձակ խորաւայրի Դաշտայինն Կիլիկիոյ, յորում քաղաքս այս 'ի միջի, և յեզերսն՝ Տարսոն, Մսիս, Անաւարզա և Սիս, գոյին արդեօք այլ գաւառք և թեմք՝ զայն ոչ գիտեմ. բայց միայն զի արտաքոյ վերոյիշելոցդ՝ էին և այլ ևս թեմք եպիսկոպոսականք, յորոց է գուշակել և վիճակս քաղաքականս՝ ոչ քաջածանօթս դրիւք. և են թեմքն յիշեալք, ՄԱՇԿԵՒՈՐ՝ 'ի սահմանս Սեաւ լերանց, ԲԵՐԴՈՒՍ և ԸՆԿՈՒԶՈՒՏ, որպէս թուի ընդ մէջ Սսոյ և Բարձրբերդոյ, ՄԱՇԱՐԴ?, ՍԱՆՎԼԵԼԱՆՑ կամ ՍԱՆՎԼԵԼՆԱՑ (եպիսկոպոս), թերևս 'ի ծովեզերեայս, ՅՈՀԱՆԱՆՑ և ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆՑ՝ թեմք անծանօթք:

Ի գլուխ յիշեցելոցս կարգելի է և ընդարձակ մասն մի երկրին Լևոնի, զոր աւատական օրինաք ունէր Սիր Ատան մեծ իշխան, որ և յետոյ դատաւորակ կամ Պայլ՝ Թագաժառանգ գտաւ Նորին Զապելի, և կոչէր ԱՇԽԱՐՀ ՍԻՐ ԱՏԱՆԱՑ. յորում տիրէր Նա՝ ըստ բանի պատմչին Կիլիկեցւոց, «բազում բերդից և գաւառաց, 'ի Սելևկիոյ մինչև մերձ 'ի Կալանաւռուս». և տիրաբար առնոյր բաժ յանցորդացն ընդ սահմանս իւր, որպէս ծանուցանէ ինքնին Լևոն արքայ 'ի պարգևագրին տուեալ յամի 1215 առ Գենուացիս. և յայտ է թէ 'ի Սելևկիոյ ձգէր յարևմուտս՝ մինչև յԱլայա, որպէս բացատրեսցի 'ի տեղագրութեան: — Յաւելեալ 'ի սոսա և զվիճակս ՏԻԱՆԱՑ և ԱՌԱԿԼԵԱՑ, զԼԱՐԱՆՏԱ (Գարաման), և զայլ ինչ մասունս Պամփիւլիոյ և Իսաւրիոյ՝ որք յարակիցք վիճակեալ էին ընդ իշխանութեամբ մերոց պայազատաց, լինին աւելի քան երեսուն գաւառք, թէ և ոչ ամենայնն ընդարձակք, այլ չափք միոյ բերդի շուրջակայ սահման գոլով. հաւանելի է գտանել և այլ ևս անուանս 'ի յայտնել նորոց մատենից և յիշատակարանաց: Բայց գործ մեծ և դժուարին, զի չասացից թէ և անհնարին է, զսահմանսն որոշել, այսքան սակաւս ունելով 'ի նախնեաց գրաւոր նշմարս, և 'ի նորոց՝ ոչ ինչ առաւել ծանօթութիւնս լեռնային կողմանց աշխարհիս. վասն որոյ ստիպիմ յաւէտ բնական որոշմանց երկրին ուշ ունել, որչափ ինչ և այս իցէ ծանօթ. Նախ ըստ ակներև կերպարանաց երկրին տրոհելով 'ի չորս մեծամեծ բաժինս. Ա. 'ի ԼԵՌՆԱՑԻՆ (կամ 'ի ԳԱՀ ԿԻԼԻԿԻՈՑ), Բ. 'ի ԴԱՇՏԱՑԻՆ, Գ. 'ի ՔԱՐԱՑԻՆ, և Դ. 'ի ԾՈՎԱՑԻՆ ԿԻԼԻԿԻԱՅՍ. և ապա ըստ իւրաքանչիւր նոցին գետահովտաց յարմարելով, որքան յիմում կարի իցէ՝ զվերոյիշեալ գաւառս, զչատս գուշակելով յանուանէ մենաստանի կամ բերդի միոյ. զի որպէս ասացի, զիւղօրայից դուն ուրեք յիշին անուանք, և ոչ կարեմք ստուգել թէ որք այժմս լսին՝ իցե՞ն նորաշէնք, եթէ զհին տեղիսն ունիցին՝ անուանցն եւեթ նորութեամբ կամ փոփոխութեամբ յայլազգեաց լեզու: Են են և 'ի պարգևագիրս Լևոնի Մեծի գրեալ անուանք գիւղից և բերդից՝ յոյնիւ չափ. այլ զի կորուսեալ են հայերէն բնագիրքն՝ լատինականքն պատճէնք մնացեալք յոյժ օտարացեալք են յազգայնոցս ձայնից, որպէս նշանակեցին 'ի տեղագրութեանս. իսկ 'ի հնումն դիւրածանօթք էին նաև սահմանք իւրեանց՝ զատուցեալք խաչարձանօք, մեծամեծ ծառովք և կոթողօք, ըստ որում է ընթեռնուլ 'ի յիշեալ պարգևագիրսդ: — Քանի՜ ճշդութիւն և կարգ յայնմ ժամանակի. քանի՜ խառնակութիւն և անստուգութիւն յայժմուս:

18. ԲԵՐԴՈՐԱՅՔ. — Սուղ ինչ բաղդաւոր յաշխարհագրական մասինս կարեմք ասել, թէ ոչ զմեզ՝ զԲերդեանս երկրին, և այն՝ անուանցն չափ. զի յոլովաթիւ քան ըզ-

1 Թուի պատմչաց մերոց չառ ընդ արևելս ձգեալ զսահմանս Փռիւգիոյ. որ Թէպէտ ստոյգ է ըստ կարի վաղնջուց ժամանակաց, յորում Փռիւգիա և Հայաստան սահմանակիցք էին, այլ 'ի միջին դարս և յառաջ իսկ քան զժամանակս Արշակունեաց և զԱղեքսանդրի՝ Փռիւգիա ամփոփէր յարևմուտս Կապպադովկիոյ: Բայց զի և անյայտ են դիրք Կոպիտառայ, և մեծ միջոց մի երկրի ընդ մէջ Անկիւրիոյ, Իկոնիոյ, Կեսարիոյ և Աֆիոն Գարահիսարի՝ սակաւածանօթ, քննութեան կարօտի խնդիրս:

գեօղիցն աւանդեալ մնացին 'ի գիրս. և մի յխկազոյն կերպարանաց աշխարհին Կիլիկիոյ են, որպէս լերինքն՝ ընդարբոյք, և բերդեանս յարուեստ. բնութեան և ճարտարութեան մրցելով իմն ընդ իրեարս՝ ամբառնալ ամուրս յամուրս, և այդ 'ի վաղեմի և 'ի միջին դարուց հետէ. յայտ է թէ չատք ոչ այնքան յապահովութիւն խաղաղականաց մարդկան յերեսաց օտար յարձակողաց կառուցեալք, որքան յառաւել աներկեանութիւն 'ի ներքուստ յարձակողացն աւազակաբարոյից՝ յօտարին սահման, ըստ նախանշանակեալ պարապման նախնի Կիլիկեցւոց. զորս յայսպիսի մարդախանձ և գողալէժ գործ՝ վարժեցուցեալ ասի Տրիփոն հակառակող թագաւորացն Սելևկիացւոց, այն որ 'ի գիրս Մակաբայեցւոցն յիշատակի. ուրանօր ապաստանէին երբեմն և Աշատ-Կիւլիկքն յիշեալք 'ի Կիկերոնէ, զորս և պանծայ հռետորն՝ նուաճեալ, և զգլխաւորս յամրոցացն քանդեալ. իսկ յետոյ նոյնք պէտք եղեն Բիւզանդացւոց՝ 'ի պաշտպանութիւն և 'ի վանումն Հագարացւոց. յետ որոց յաւելին և մերայինք, զոմանս նորոգելով կամ վերականգնելով, և զոմանս 'ի կորդոյ շինելով, ընդդէմ առաջին տեարց երկրին և նորոց ագահողաց, և նովիմբ յաջողեցան բովանդակ դարս տեւել տակաւ 'ի շրջափակի օտարազնեայց ոխերիմ թշնամեաց. և բարեկամաց իւրեանց՝ որպէս առաջնոց Խաչակրաց, անքոյթ ապաստանարան ընծայելով զնոսին. որում վկայեն և պատմիչք նոցին արևմտեայց[1]. իսկ զթշնամիս՝ բազում անգամ յուսաբեկս յետս նհանջելով լոկով տեսլեամբ ևեթ ահեղ ամրութեանցն: Կայսրն Մանուէլ փափագեալ հանգոյն հօր իւրոյ նուաճել զերկիրն՝ սադրէր Մասուտ սուլտանի Իկոնիոյ, ըստ բանից Պատմչիս մերոյ, թէ « Հանգո՛ զայրեցումն սրտի իմոյ յազգն Հայոց, տապալելով զաւերոցս նոցա և բնաջինջ առնելով զնոսա. և » չարժեալ Սուլտանն գայր բազում զօրօք յԱնարզաբա, » և ոչ ինչ կարաց առնել »: Ինքն իսկ բազմայաղթն Սալահէտտին կասեցաւ առ վայր մի յորչուանացն՝ յակնարկելն յամուրս լերանց Ռուբինի: Ի նոյն ամրոցս վստահացեալ անշուշտ և եղբօր նորա Լևոնի, յետ իբր երկոտասան ամաց՝ խստիւ արար պատասխանի դեսպանաց նորին զառօղի՝ որ 'ի հնազանդութիւն կոչէր զնա: Մի ոմն 'ի յաջորդաց նորին սուլտանաց Եգիպտոսի, որք բազում անգամ զփորձ առին զամրութեան բերդորէիցս, 'ի բարեկամութեանն ժամանակի տայր գրել 'ի թղթին առ թագաւորն Հայոց, և մաղթէր, զի « Ցրուեսցէ Տէր 'ի » նմանէ զխորհուրդ նենգութեան բանսարկուին սատա- » նայի, և պահեսցէ նմա զիշխանութիւնն 'ի վերայ ա- » մենայն ամրոցաց երկրի իւրոյ, որոց գլխաւոր է Սիս »[2]: Վասն սորին Լևոնի ասէ Ասորի պատմիչն (Միքայէլ), տիրեալ եօթանասուն և երկու բերդից. և Սմբատ ծանուցանէ՝ զի մասն մի սոցին էր երբեմն ընդ իշխանութեամբ սուլտանաց Իկոնիոնի, զորս « նեղեալ անձկացոյց յոյժ, » առնլով 'ի նոցանէ բերդորայս, քանդեաց զերկիր նո- » ցա ». և զմնացեալսն ընդ իշխանութեամբ Յունաց՝ արծաթով գնեաց: Կէս 'ի բերդորայիցն էր ընդ անընդմէջ իշխանութեամբ թագաւորին, և զկէս ունէր աւատական օրինօք, շատ կամ սակաւ ազատութիւն շնորհելով նախնի տեարց նոցին կամ որոց ինքն տայր 'ի պարգև: Պատմիչն Կիլիկեցի, յորմէ և Գունդստապլն Սմբատ, թուէ մի առ մի քառասուն և վեց բերդատեարս յիսուն և վեց բերդից՝ 'ի ժամանակի թագընկալութեանն Լևոնի, 'ի սկիզբն 1199 ամի, յորոց ոմանք՝ զայն մի նուազ ևեթ յիշին 'ի պատմութեան. և ըստ աշխարհագրական դրից նոցին, յարևելից ծայրից սահմանաց տէրութեանն սկզբնաւորեալ և 'ի ծովափանց Ծոցոյն Հայոց, դասակարգէ զբերդորայս, դառնալով յարևմուտս, ապա ընդ հիւսիս 'ի Գաւ Կիլիկիոյ, 'ի հովիտ Կալիկադնոսի, և յափունս Պամփիւլիոյ աւարտելով:

Ի թիւ վաթսընից, թերևս հազիւ մի կամ երկու 'ի ծանօթիցն չիցեն 'ի կարգի բուն բերդորէից, թէ և ամենեքին ամուրք. զծովեզերեայսն՝ ծովաբերդս կոչէ աշխարհագիրն Վարդան: Բայց ոչ այսչափ միայն էին բերդորայք յիշխանութեան պայազատաց մերոց. անդստին Խոռենացի յաշխարհագրութեանն՝ իբրև մի 'ի նշանաւոր կերպարանաց Կիլիկիոյ՝ ասէ ունել քաղաքս բազումս և բերդս. և ոմն յընդօրինակողաց գրոց նորին՝ յաւելու 365 բերդս, որպէս և Բաղրամ գրէ միաձայնութեամբ յիւրումն աշխարհագրութեան: Յայտ է զի սովորական գրոյց է յաւելու՝ թուով աւուրց տարւոյ նշանակել զբազմութիւն ինչ իրաց. սակայն եթէ կիսով ևս այնր ասիցեմք վասն Կիլիկիոյ՝ թերևս ոչ հեռի գտանիցիմք 'ի ճշմարտութենէ, յորժամ թէ հնար լինիցի մի առ մի և ոտն առ ոտն քննել զամենայն զլեռնայինն և զդաշտայինն և զծովայինն, զքարձունս և զեզերս և զհովիտս բնակեալս, զմեծ և զփոքր ամրոց՝ միանգամայն համարեալ. որպէս զանազանէ ոմն 'ի ժամանակագրաց մերոց 'ի յիշելն զաւաղելի կորուստ Այասոյ և զարևելեան հարաւային մասին աշխարհին՝ յամի 1347. յորում՝ առեալ զինու զօրութեամբ սուլտանաց Եգիպտոսի, « զամենայն երկիրն յայնկոյս գե- » տոյն Ջահան կոչեցելոյ, որ էր Դղեակս, Պուրճս և Ամ- » րոցս չորեքտասան, ամենայնն իւրեանց սինոռօքն, ե- » տուն 'ի Տաճիկսն (այս ինքն է յԵգիպտացիս), պայմա- » նաւ »: Վասն այսպիսեաց խիտ առ խիտ բերդորէից 'ի սրածայր գագաթունս բլրոց և լերանց, Արաբացիք 'ի հընումն կոչէին զնոսին ատամունս կամ գագաթունս դենին իւրեանց, զուճուրի իսլամ[3]:

Կարգեմք աստանօր որչափ ինչ 'ի պատմչէն մերոյ և որ յայլ գրոց գտեալ է մեր անուանս այդպիսեաց մեծ և փոքր ամրոցաց, ըստ այբուբենից, յաւելլով աստղանիշ և զյիշեալսն յօտարաց, յարևելեայց և յարևմտեայց:

Ալար
*Ալէնգաշ
Ամուտա
Այժուտապ (Յուտապ)
Անամուռ
Անդուշճա

1 Eisque Armenii obviam læti veniebani, et in suis civitatibus et castellis recipiebant. — Robert Monacus.

2 Cartulaire, 235.

3 Ռիտտէր, ժթ. 75, ըստ Համմէրի:

Անդրէասանց բերդ
Անէ
Առլուծ
Ասկուռաս
Ատառոս *կամ* Աստռօս
Արեգնի
*Բազէլի բերդ [1]
Բարձրբերդ
Բերդկան բերդ
Բերդուս
Գանձէ դղեակ
*Գումբէթ-փոր ?
*Դարպսակ
Դեղնքար
Դուիզխ ?
Ընկուզուտ
Թիլ (Համտընոյ)
Թիլ Սապոյ *կամ* Թլպասոյ բերդ
Թոռնկայ բերդ
Ժամնկայ բերդ
Ժեռմանկան բերդ
Լակռաւենի
Լամաս
Լամբրուն
*Լաշիան ?
Լաւզատ
Լեւոնկլայ *կամ* Լեւոնի բերդ
Լուլու
Խալընճաքար
Խնձորովիտ [2]
Կալանօնօռոս
Կայտէնի դղեակ
Կանչի
Կապան
Կաստաղօն
Կեմայ դղեակ
Կիզիստուա
Կիստռամ
Կոպիտառ
Կոռիկոս
Կովառա
Կովաս
Կոտրատ
Կուկլակ
Կումառտիաս
Կուպա
Կուտաֆ *կամ* Կուտ
Համուս
Հարուն
Ճանճի
Ճկեր
*Ճռճում
Մազոտխաչ

Մաղվա
Մանաշ
Մանաւղատ
Մանիօն
Մառնիշ
Մեծքար
Միտիզօն
Միքայէլ-կլայ
Մոլեւոն
Մունդաս
Մուռանդին
*Մօտրիկ
Նաղլօն
*Նէճիմ *կամ* Նէճմիէ
Նղիր
Նորբերդ
Նորբերդ միւս
Շահապ ?
Շէկատ ?
Շողական
*Շուք *կամ* Նուք-մէրզէպան
Պալապօլ
Պաղրաս
Պապեռօն
Պոտանդէ (Պոզանդլի)
Պոտռօմ (Պուտրում)
Պունառ
*Պուտպայս
Պռականա
Ջլկանոց
Ջօֆրէկլայ
Ռանան *կամ* Ռօրան ?
Սարվանդաւ *կամ* Սարուանդիքար
Սելեւկիա
Սեւ աւերակ
Սիկ
*Սին-խլ-հատիտ
Սիմանակլայ
Սինիտ
Սիւիլ
Սմբատակլայ
Ս․ Սոփէ
Վահկայ
Վաներ
Վեռըսկլի *կամ* Վոռկիս
Վէտ
Տաճկիքար
Տիմիտուպօլ
*Էր Րուպ
*Քենուկ ? (Keinuk) [4]
*Քիրքիս ? [5]
Փարխնուց *կամ* Փարխնիք
Փօռնոս

[1] Թարգմանեալ 'ի լատին կամ 'ի փռանկ լեզուէ։
[2] Սա ոչ որոշակի բերդ կոչի․ այլ և սեր Դորին Լիկոս՝ երբեմն տէր խնձորովոյ անուանի, երբեմն տէր Կիստռամայ։
[5] Ըստ լատին թարգմանութեան պատմութեան Աբուլֆարաճայ։

Այս ամենայն բերդք և ամրոցք՝ բաց 'ի սակաւուց ոմանց, քննեցին 'ի տեղագրութեանն. իսկ աստանօր յուշ արասցեն անուանքն՝ զի երիր կամ չորիր մասն դոցին դաստակերտք են Հայոց՝ նորոց տերանց Կիլիկիոյ։

Ցայտ է թէ յոլովագոյն մասամբ 'ի լերինս կառուցեալ էին բերդորայքդ, յորս է ցարդ տեսանել՝ աւելի կամ պակաս աւերեալս և յքեալս. և ամենայն նոր ուղևորք վկայեն՝ զի յոր կողմն և հայիցի ոք՝ նշմարին ամրոցք և դղեակք 'ի լերինս, որպէս մնացորդք և գերեզմանք կորուսեալ փառացն. այլ յոյժ սակաւուց լսի անուն, և այն ոչ հինն, և ոչ որոց 'ի լերինսն են, այլ որոց մերձ 'ի դաշտավայրն. և չէ յայտ 'ի վերոյգրելոցդ իցեն եթէ որիչք։ Այսպիսիք են անուանեալքն զարդիս, Սևաչա 'ի գաւառս Կիլիկիոյ. Եպչան գալէ կամ Շահ-Մարան գալէսի (Օձաբերդ) յեղ. հիւսիսոյ Մասայ. և ոչ չատ հեռի անտի Գուրտ գալէսի. Թուռլու գալէ ընդ մէջ Մասայ և Անազարբայ. Զորտան գալէսի 'ի Հր. Պուսրուսի, և առ ստորոտովք Ամանոսի. Թօփրագ գալէ 'ի Հս. Մ. Զորտանոյ և 'ի Հս. Խասոսի. Կվալ օղլու կամ Մօսքու? 'ի Հր. Մասայ, առ ստորոտով լերանց նորին. Քապուր գալէ. Եունենա գալէ?, Անտալ գալէ յՆ. Սսոյ, Գուռ գալէ յելից Գարապազարի։ Ի ծովեզերին՝ Հայընահ գալէսի առ Սոլեաւ. Աց գալէ ընդ մէջ Լամոսոյ և Այասայ. Խանեցի մերձ 'ի Կրագեանն Անտիոք. և այլ ոչ սակաւ ծովափերդք, որ յակն անկանին նաւողացն զեղերքն, և զմերձակայ չինից անուանս կրեն։ Ցիշին ևս Եսանիֆա, Զափարձըգ [1], Քիւչիւկ գալէ ընդ մէջ Ուլաշայ մերձ 'ի Տարսոն և 'ի կապանն Կուկլակայ. Քէչի գալէ (Այծից բերդ), մերձ 'ի Պէրէքէթլի մաղէն. Կէօզլէր, մերձ 'ի կապանն Կուկլակայ։

19. ԹԵՄՔ ԵՒ ՎԱՆՈՐԱՅՔ. — Ըստ բազմութեան բերդորէից, և մանաւանդ ըստ աւատական օրինաց ժամանակին, յայտ է թէ իշխանութիւն կամ վարչութիւն երկրին 'ի բազում մասունս կտորեալ լինէր, այլ ըստ աշխարհագրական տեսութեան՝ բազմութիւն բերդիցդ պարունակիւր 'ի սակաւ գաւառսն անդ նշանակեալս, որպէս տեսցին և 'ի տեղագրութեանս։ Իսկ ըստ եկեղեցական վիճակաց, որպէս յիշեցաւ վերագոյնդ, պատմիչն մեր Նախակարգէ բերդատեարցն՝ վեշտասան եպիսկոպոսունս միայն, յորոց երկու արքեպիսկոպոսունք արտաքոյ գոլով Կիլիկիոյ, (Երուսաղեմին և Անտիոքայն), մնան չորեքտասան. և թուի յեղ. ԺԲ դարու և 'ի սկիզբն ԺԳին առ Լևոնիւ՝ սակաւութիւ և մեծավիճակ լինել եպիսկոպոսարանաց, և յետ բազմանալոյ շինից և վանորէից՝ ստորաբաժանեալ և յաւելեալ թուոյ նոցին. և 'ի դէպ է հաստատուն համարել զայն ժամու թիւն 14. զի թէ աւելի էին՝ յիշէր և թուէր պատմիչն, որ նախապատիւ կարգէ զեպիսկոպոսունս քան զիշխանսն. այն զի ունիմք առ այս վկայութիւն իմն 'ի ժամանակակից ականատես լատին եպիսկոպոսէ Կրեմոնայ՝ Սիկարդեայ, որ յամի 1203 առընթերակայ գոլով հանդիսի ընծայման մթրաց և հովուական գաւազանաց՝ 'ի դիմաց Քահանայապետին Հռովմայ, 'ի ձեռն նուիրակի նորին Պետրոսի կարդինալի, չորեքտասան եպիսկոպոսաց աւէ բաշխեալ զայնոսիկ՝ առաջի թագաւորին Լևոնի և կաթողիկոսին։ Բայց յերկոսին յաջորդ դարս, ԺԳ-ԺԴ, յաւելեալ երևին տասնիւ չափ ևս եպիսկոպոսունք 'ի բնիկն Կիլիկիա և 'ի մերձաւոր սահմանս, 'ի բաց թողեալ և զնահանգն Մարաշու. և են համօրէն որչափ ծանուցեալ են մեզ աթոռքն,

## Արքեպիսկոպոսականք

Սիս, աթոռն 'ի Դրազարկ վանս
Տարսոն, 'ի Մլիճ
Լամբրուն, 'ի Սկեւռայ
Անաւարզա, 'ի Կաստաղօն
Մամեստիա, յԱրքակաղնի

## Եպիսկոպոսականք

Ատանա
Այաս
Բարձրբերդ, յԱկներ
Կապան, յԱրեգնի
Ծամնդաւ
Կոպիտառ
Սելեւկիա
Ընկուզուտ
Հարգան
Մոլեւոն, 'ի Գռներ
Մաշկեւոր
Բերդուս
Սանվլընայ, տեղի անծանօթ
Ցոհնանց, անծանօթ
Փիլիպպոսեան, անծանօթ
Մեծքար
Մաշարդ, անծանօթ տեղի [2]
Տիանա

Ցաւելլի էր 'ի սոսա և Կիպրոս, որոյ աթոռն 'ի Նիկոսիա (Լեւգոսիա), մերձաւորութեամբն և անանջատ յարաբերութեամբ ընդ Սիսուանայ և ընդ թագաւորին. իսկ Սեղինոնդ՝ որոյ եպիսկոպոս հաստատեցաւ 'ի Ժ դարու՝ ոչ յիշի առ պսպաղատութեամբ Ռուբինեանց։ — Ի ժողովս Սսոյ և Ատանայ նշանակին եպիսկոպոսք երկուց ևս աթոռոց, որոց անուանք ոչ աներկբայք՝ յայնժամ միայն յիշին, և ոչ իսկ գիտեմ թէ 'ի Կիլիկեայս իցեն եթէ արտաքոյ, և են Ուռպել և Բոդրան?*։

1 Պորքըր գրէ Sawordchick.

2 Այլ և երկբայելի, զի մի անգամ միայն գրի այսպէս 'ի Պատմութեան ժողովոյն Սսոյ յամի 1307, և եպիսկոպոսն կոչի Վարդան. իսկ որ դարձեալ Մաշարդ գրի առ Չամչեանի (Գ, 34), 'ի լատինն՝ (յորմէ առնու) է Mathekar, զոր արժան է ընթեռնուլ Մեծքար։

* Ի կարգի հայրապետաց Ա. Նիկիոյ ժողովոյն, յիշին՝ ըստ նախնեաց մերոց թարգմանութեան, եպիսկոպոսք Կիլիկիոյ՝ եկեալք, « Թէոդորոս 'ի Տարսոնէ
Ամփոնէ յՆեպիփանէ
Նարկիս 'ի Ներոնիադէ
Մովսէս 'ի Կաստաբաղէ
Նիկետէս 'ի Փաղաւիդէ
Եդեմոն քորեպիսկոպոս
Պապինոս յԱզանէ

20. *Հետաքննական ևս են ինձ հայկական վանորայք աշխարհիս, որք և յետ բերդորէից ճոխագոյն ցանկ ընծայեն անուանց՝ իբրև վաթսնից, թէպէտ և նոցին նման յոլովից, պատկառեմ ասել թէ զուգէ և բնաւից՝ անծանօթք են այժմ դիրք. և են ըստ իմս գիտութեան.*

Ակներ *կամ* Ականք, վանք Սուրբ Աստուածածնի
Անդուլ անապատ
Անդրիասանց ուխտ
Առաքելոց վանք, *եթէ չիցէ Ակներն*
Արեգնի վանք
Արիգի, *'ի Սեաւ լերին* [1]
Արմենի անապատ
Արքայկաղին
Ա. . . . . [2] անապատ
Բարսեղանց անապատ, *'ի Սեաւ լերին*
Բլրցի *կամ* Բլրոյ անապատ [3]
Գալու (Գայլոյ?) անապատ
Գեմրուձգեր
Գերմաղբիւր
Ս. Գէորգ (*'ի Գահս Կիլիկիոյ*)
Ս. Գէորգ *միւս*, *'ի Սեաւ լերին*
Գռներ
Դրազարկ *կամ* Թրազարկ
Ջեթունի վանք Ս. Աստուածածին եւ Ս. Ամենափրկիչ [4]
Ընկուզուտ
Թիւրքթի վանք, Ս. Աստուածածին
Լիսանկան
Խճկտոր, *զուգէ նոյն ընդ Արքայկաղնի*
Խորին վանք *կամ* անապատ
Կամբիկ անապատ, *առ Մոլեւոնիւ*
Կանչոյ վանք, Ս. Ստեփանոս
Կաստաղօն (*աթոռ Անաւարզայ թեմին*)
Կրակ [5]
Ձորոյ վանք, *թուի նոյն ընդ* Ձորոյ Ս. Թորոս
Ս. Մամաս [6]
Մաշկեւոր
Մեծքար *կամ* Մեծայր
Միակեցեր
Մլիճ
Մովսիսնոց
Ս. Յակոբ, Հաճնոյ վանք
Յոհնանց [7]
Յովանիսի անապատ, *յԱրմենի լերին*
Շափիրին
Շուխրաւանդորեայ ?
Շուղր — *'ի Սեաւ լերինս*
Պաղակծիակ
Պառլահոյ
Քարաշէթաւ
Պօղոսական անապատ, *թուի Ս. Պօղոսի վանք 'ի Սիս*
Ջրվալկայ անապատ
Ռամանոս անապատ
Ջրճորին? Cirorin *գրեալ 'ի լատինն* [8]
Սաղրու անապատ, Ս. Աստուածածին
Սանվիլանց [9]
Սիմանակլայ վանք
Սիսեռնուտ [10]
Սկեւռայ վանք
Սկեւռայ անապատ
Վարդկու վանք
Փերճեր *կամ* Պերճեր վանք
Փիլիպպոսեանց [11]
Քեղեղական վանք
Ֆռնուսու վանք, Ս. Կարապետ։

*Մակեդոնիոս 'ի Մամուեստէ*
*Տարակոնդէս յԷգասէ*
*Եւսիքիոս յԱղեքսանդրէ*
*Նարկիսոս յՆերոնիապօլսէ »:*

*Յետ այնր ըստ հին եկեղեցական վիճակագրութեան՝ երեք արքեպիսկոպոսական նահանգք էին Կիլիկիոյ, Տարսոն կամ Ա Կիլիկիա, Անազարբա կամ Բ Կիլիկիա, և Սելեւկիա կամ Իսաւրիա, յորս միահամուռ եպիսկոպոսք 40. որոց անուանք և դասք կարեն մեզ ընծայել աշխարհագրական ծանօթութիւնս, յոր սակս և կարգեմք աստանօր.*

Ա ԿԻԼԻԿԻԱ. — *Տարսոն*, Ταρσός, *μητρόπολις*
*Պոմպէուպոլիս*, Πομπηϊούπολις
*Սեբաստիա*, Σεβαστή
*Կոռիկոս*, Κώρυκος
*Ադանա*, Ἄδανα
*Ագուսիա*, Ἀγουστία
*Մալոս*, Μάλος
*Զեփիւռիոն*, Ζεφύριον

Բ ԿԻԼԻԿԻԱ. — *Անազարբա*, Ἀνάζαρβος, *μητρ.*
*Մոպսուեստիա*, Μοψουεστία
*Եգէաս* (*Այաս*), Αἰγέαι
*Եպիփանիա*, Ἐπιφανία
*Աղեքսանդրիա*, Ἀλεξάνδρια
*Հռոսոս* (*Արսուս*), Ῥῶσος
*Իռինուպոլիս*, Εἰρηνούπολις
*Փլաւիաս*, Φλαβιάς
*Կաստաբալա*, Καστάβαλα

Գ ԻՍԱՒՐԻԱ. — *Սելեւկիա*, Σελεύκεια, *μητρ.*
*Կելենդրիս*, Κελενδέρη
*Անեմուռ*, Ἀνεμούριον
*Տիտիուպոլիս*, Τιτιούπολις
*Լամոս*, Λάμος
*Անտիոքիա* (*Կրագեան*), Ἀντιόχεια
*Յուլիոսեբաստէ*, Ἰουλιοσεβαστή
*Կեստրա*, Κέστροι

1 *Յիշեալ 'ի Մատթէոսէ Ուռհայեցւոյ:*
2 *Մնացորդ անուանն եղծեալ էր 'ի յիշատակարանի գրոց:*
3 *Ոչ կարացի ստուգել զտեղի և զգիրս վանացս, զոր յիշատակարան ժամագրոց գրելոյ յամի 1324 այսպէս Բլրցի անապատ կոչէ, և զի յիշէ զԹագաւորն Լևոն Դ, տայ կարծել յաշխարհիս Կիլիկիոյ. մանաւանդ զի մի 'ի վանահարց ժողովյն Սսոյ որ առ Մխիթարաւ (յամի 1342), 'ի լատիներէն Թղթին գրի Յովհաննէս Հայր Բլրոյ վանից.* Johannes abbas de Pelor.
4 *Ոչ գտի զսոսա յիշեալ յառաջ քան զԺԶ դար:*
5 *Ոչ յիշի սա վանք կոչմամբ, այլ ընդ վարդապետս վանաց 'ի ժողովս յիշի և վարդապետ ոմն Կրակացի:*
6 *Ոչ յիշի առանձինն, այլ 'ի պարգեւագրի ուրեք Լևոնի Բ:*
7 *Իբրև եպիսկոպոսարան յիշեալ է սա:*
8 *Որոյ առաջնորդ էր Կարապետ 'ի ժողովի Սսոյ յամի 1342. ոչ գիտեմ վասն էր Հ. Չամչեան Մեծքար համարի զտեղիս զայս:*
9 *Եւ սա յիշի իբրև եպիսկոպոսարան:*
10 *Այսպէս համարիմ զլատիներէն գրեալն* Sisernot.
11 *Եւ սա 'ի կարգի եպիսկոպոսարանաց յիշեալ:*

Յիշին և երեք վանք Ասորւոց 'ի Սիս և 'ի Մսիս։

Կանանց վանք կամ Կուսաստանք ոչ յիշին յանուանէ. այլ զի էին՝ ցուցանէ և պատմութիւն ընտանեաց Ս. Ներսիսի Լամբրոնեցւոյ, որոյ մայր և երկոքին քորքն՝ 'ի ձեռաց իւրոց ընկալան զքեմն հաւատաւորաց. և 'ի Թըղթառաջս կամ վերտառութիւնս Թղթոց յօրինեալս 'ի Կիլիկիա և վասն Կիլիկեցւոց, կարգի այս պատճէն վասն «Ծգնաւոր կուսի. Ճշմարտութեան ճանապարհին անմոլար ընթացող, սիրող Քրիստոսի և ատեցող աշխարհի, » մնեալ սրբութեամբ և զարդարեալ անարատութեամբ, » սուրբ ճգնաւոր և խաչակրօն աշխատաւոր, բարեպաշտի » և մեծահարկի կուսի Ա. Ա. »։

Սելինոս, Σελινούς
Յոտապ, Ἰοτάπη
Դիոկեսարիա, Διοκεσάρεια
Ոլբա, Ὄλβας կամ Ὄλβη կամ Ὀλύα
Կլաւդիուպոլիս, Κλαυδιούπολις
Յերապոլիս, Ἱεράπολις
Դալիսանդ, Δαλισανδός
Գերմանիկուպոլիս, Γερμανικόπολις
Իրինոպոլիս, Εἰρηνόπολις
Փիլադելփիա, Φιλαδέλφεια
Մովլով կամ Մելին, Μωλώη, Μελόη
Դարասոս, Δαρασός
Զեռի, Ζεέδη կամ Σβίδη
Նէապոլիս, Νεάπολις
Լաւզադ, Λαύζαδος

Յարին 'ի սոսին և

Զենոնուպոլիս, Ζηνωνόπολις
Ադրաս, Ἀδρασός
Դոմետիուպոլիս, Δομετιούπολις
Բանաբ, Βανάβων
Բոլբոս, Βολβοσοῦ
Կոստրադ, Κοστράδος.

Լատին կամ փռանկ Թեմագրութիւն արարեալ յամի իբր 1180, այսպէս կարգէ զԹեմս երկոցուն Նահանգաց Կիլիկիոյ՝ ընդ պատրիարքութեամբ Անտիոքայ, աղաւաղեալ գրութեամբ անուանց.

Ա. Տարսոն, Tarsus
Սեբաստ, Sebaste
Մալլոս, Mallos
Տինէ կամ Թինա, Tine, Thina
Կոռիկոս, Corichos
Պոտանտէ, Poderade
Բ. Անարզաբա. Anavrase
Եպիփանիա, Epifanie
Աղեքսանդրիա, Alexandrie
Փոքր Իրինուպոլիս, (La petite Yrinople)
Կամբիսոպոլիս, Campisoble, Cambrisopolis
Փլաւիաս, Flavias
Հռոսոս, Rhosos
Կաստաւալ, Castavali
Եգէաս, Egæas
Սիս, Sisie.

---

Աստանօր, քանզի կրօնական յիշատակք աւարտեցաւ Ներածութիւն Տեղագրութեանս Կիլիկիոյ, սպրդեսցի և աղուականս այս՝ զապագայից և զվերջնոց լինելութեանց աշխարհի, այսինքն է գալստեան Նեռինն. որ աւանդի 'ի յօդաբան գուշակութեան ուրեք, ոչ գիտեմ յերիւրեա՞լ եթէ Թարգմանեալ յազգային գրչէ. իբրու թէ յետ այսր և անդր դեգերելոյն, «Յայնժամ անօրէն բանսարկուն » (Նեռն) գումարէ զզօրս իւր, և խաղացեալ գայ 'ի կողմանս հարաւոյ՝ յաշխարհն Կիլիկեցւոց, և անդ լինելոյ » բանակի զօրաց իւրոց », և այլն։




14. Տարկոնդիմոտ թագաւոր Կիլիկիոյ (Տես յէջ 40).




18. Կիլիկիա և սահմանքն 'ի նախնեաց.

# Ա.

# ԼԵՌՆԱՅԻՆ ԿԻԼԻԿԻԱ

## ԿԱՄ

# ԳԱՀ ԿԻԼԻԿԻՈՅ



Տեղի Նախընծայ կամ բնավայր հաստատութեան տոհմի և պետութեան Հայոց 'ի Կիլիկիա, ծանուցաւ լինել բարձրաւանդակն լերանց, որ մահկաձև 'ի հարաւոյ աբևմտից ձգի ընդ հիւսիսի աբևելից. ըստ այսմ ուղղութեան պատշաճ թուեցաւ և մեզ հետազօտել զերկիրն՝ ըստ բնական հանգամանաց և ըստ քաղաքական կամ պատմական յիշատակաց։

Լեռնային երկիրն այն՝ զոր ճահողակի Գահ Կիլիկիոյ անուանեցին մերայինք, սկսանէր 'ի հիւսիսոյ արևմտից Նահանգին Տարսոնի, յորում և մասն սեփական գաւառի սորին տարածելոյ ընդ արևելս 'ի դաշտն. այլ ուր և զինչ ընդ սա և ընդ Լամբրոնի գաւառն էր սահմանահատ, այն ոչ է յայտ. սակայն համարիմ առաջնոյն սեփականեալ գյառուկ գետահովիտն զկոչեցեալն արդ (Ջաղացաձոր) Տէկիրմէն տէրէսի. և թողլով զայն յառաջս քննութիւն, մատչիմ յերկրորդն։

Առաջին յիշատակաց տեղի յայժմուս՝ յայսմ մասին, 'ի կողս կձախառն քարայրոյ միոյ, յաջմէ գետոյն, իբր երեք ժամուք կամ տասն մղոնաւ հեռի 'ի քաղաքէն, է քարայր մի ստորերկրեայ քառակուսի կամարաձև 'ի վերոյ, ուխտատեղի մահմէտականաց, յոր և իջանեն սանդուղօք, համբաւելով տեղի ննջման Եօթանց ոմանց, հանգոյն քրիստոնէից աւանդութեան զԵօթն մանկանց Եփեսոսի. և մի 'ի մեծագոյն կամ սրբագոյն ուխտից համարի առ նոսա. ուր և բազում զենմունս զառանց առնեն, ուտելով և բաշխելով աղքատաց։ Աւանդի 'ի Կուրանի՝ երկարամեայ ննջումն սոցին յանարև քարայրին, յորոյ մուտս տարածեալ պահապան կայր շուն և հսկաճէր զմերձեցեալսն. յաւելուն մեկնիչք նոցին՝ եթէ ոմանք երիս, այլք հինգ և ոմանք եօթն ասեն զննջողսն, զատ 'ի շանէն, այլ առոյգն սակաւուց յայտ գիտելի է, և թէ չէ պարտ վասն այնր հարցանել զքրիստոնեայս։ Զարդիս զլեառնն կոչեն Ճէսպէլ-էլ-քէհֆ կամ Ասհապ-իւլ-քէհֆ[1]. և առ երի կառուցեալ է մզկիթ մի փոքրիկ ծախիւք մօր Թագաւորացն Ապտիւլ Մէճիտի և Ապտիւլ Ազիզի, և տնկունք գագարք ուխտաւորաց և ուղևորաց։ Աւանդեն ոմանք յայլազգեացն՝ Եօթանց կամ չորից հրակայից 'ի Լամբրունէ իջեալ երբեմն վասն հարկս պահանջելոյ 'ի քաղաքացեաց Տարսոնի, և նախ մտեալ 'ի քարայրս յայս՝ յաւել և արբենալ, և 'ի քուն մտանելով թմբրեալ մնալ զամս 150 կամ 200, և 'ի զարթնուլն՝ տեսանել մեծամեծ փոփոխութիւնս հանդիպեալ յայն միջոց ժամանակի, և հրամանաւ այն ժամու տիրող Թագաւորին՝ (որ ջնջեալ էր զցեղ հսկայիցն), 'ի նմին այրի

[1] اصحاب الكهف, որ Թարգմանի Բնակիչք քարայրի, զորմէ երկար ճառէ Կուրանն 'ի սուրայն ԺԸ (Պըռլ թուրայէ)։

դադարել նոցա մինչև ցմահ իւրեանց, դարմանելով առձկօք որ կարգեցաւ նոցա, հօտ մի խաշանց. և փորել իւրեանց գերեզմանս ընդ գետնաւ: — Մերձ 'ի քարայր Ննջողացն, առ գեօղիւ՝ զոր Լանկլուա գրէ Garboulji? են ոչ սակաւ քարափոր գերեզմանք, շատք խանգարեալք: — Ընդ մէջ Տարսոնի և Եչ Քէհֆ քարայրի՝ յարևելից կուսէ՝ կայ Գաւզըգայաչ գիւղ [1]:

Մերձ 'ի նոյնս սակաւ ինչ վերագոյն են և գեօղքն Սանճիքար? և Ուլաչ. առաջինն քար բառիւ յօդեալ՝ կարծիս տայ հայկական հնութեան, այլ ստուգելի է նախադաս բառն: — Առ երկրորդաւն նշմարին մնացուածք հին ադիւսակերտ շինուածոյ, և ջրշեղջ փորեալ 'ի քարաժեռն: Պատմիչք Օսմանեանց յիշեն զանգիս զայս իբրև վիճակ կամ դեհ՝ ՈՒԼԱՃ-ՆՈՒՐՏ անուամբ, ընդ որ էանց գունդ մի զօրաց Բ Պայէզիտի յամի 1487, մինչ այլք անցանէին ընդ վերնակողմն լերանց և ընդ կողմանս Տարսոնի, 'ի խաղալն 'ի վերայ Գարաման իշխանի: Ըստ նոցին պատմըչաց՝ կողմանքս որ ընդ մէջ Պուլղար լերանց և Տարսոնի՝ կոչէին ԱՐՍԱԼ: — Ուլաչ՝ սակաւուք 'ի բաց կայ յափանց Տէկիրմէն գետոյ, որ է արևմտեան զուգորդ Կիւդնոսի, յաջմէ նորին. իսկ 'ի յահեկէն՝ ոչ շատ հեռի յՈւլաչայ՝ 'ի Հս. Եւ. առ գետեզերբն նշանակի Գըզըլփիքին? (Kuselbikin) շէն փոքր կամ հանգրուան. յորմէ փոքր մի ևս վերագոյն առ դարձուածով կամ արմկամբ գետոյն՝ կան ջրաղացք: — Աստի և 'ի վեր ընդարձակին միջադետք երկուց առաջնոցն Կիւդնոսի, և ըստ տեղագրի միոյ՝ Խօշպուհուր? (Kechbuhur) կոչի այս մասն գետահովտին. յոր երթալով ընդ արևելակողմն հիւսիսի՝ ճանապարհն հանէ 'ի Լամբրուն. իսկ ընդ արևմտակողմն՝ 'ի մօտոյ ևս հասուցանէ 'ի զուգակիցն Լամբրոնի և համայիշատակն բերդ Պապեռօնի, առ որ ուղղի և կարգ բանիցս. Թողլով ապագայից բաղդի՝ քննել զշուրջ սահմանսն, զմիջոց չորից ժամուց ճանապարհի՝ որ յՈւլաչէ և անդր, լեռնադլեանյն ամբառնալով ընդ կիրճս, ընդ քարաժայռս և ընդ մացառս, յորոց միջի սփռեալ են աւեր և ամայի շինատեղիք և սրբավայրք. լռեալ և հանգուցեալ մընացորդք վանորէից և եկեղեցեաց. որոց հանգոյն գրեաթէ յամենայն այսպիսի սահմանս՝ է տեսանել իբրև դաշնակիցս՝ զամրոցս և զտաճարս աղօթից. իսկ 'ի զերծ և 'ի դիւր տեղիս, առ ստորոտովք քարեղէն և անտառամոլ պարսպաց լերանցն՝ գտանին տակաւին շէնք բնակեալք:

22. Այսպիսի են երկոքին Զանտըր անուն գեօղք, Ստորին և Վերին, կամ Փոքր և Մեծ, վեց ժամաւ 'ի Հս. Եւ. Տարսոնի, և նովին դրիւք երկժամաւ 'ի քարայրէն (Եչքէյֆ). են 'ի նոսին և բնակութիւնք Հայոց. մերձ 'ի նոյնս է Պեօվրէքլի հանգրուան մի Եիւրիւք վրանաբնակաց: Ստորինն կամ Փոքրն Զանտըր կայ 'ի խոռոչի մեծի խորաձորոյ. Մեծն՝ ժամաւ բացագոյն 'ի բարձրաւանդակի լերին՝ որ և ամարանոց է բնակչաց Ստորնոյն: Սակաւուք հեռի 'ի Վերնոյն 'ի ձորեզեր Ջաղացաջրոյն (Տէկիրմէն), ամբառնայ մեկնակ քարաբլուր մի շեղջաձև 'ի միջի այլոց լեռնակաց շարակցելոց, դժուարամատոյց և դժուարելանելի ապառաժուտ. և արձակ դրիւքն, (զի չկայ բարձրագոյն քան զայն 'ի հարաւոյ կուսէ), 'ի ծովափանց իսկ Տարսոնի և Պոմպէուպօլսի նշմարի աչաց՝ վերակառոյց բերդաւն Զանտըր գայլսի. յորում արձանագիրն Սմբատայ Գունդստապլի եղբօր Ա. Հեթմոյ արքայի, կոչելով զինքն « Տէր դղեկին հայրենական ». ոչ անհաւանցուցանէ լինել զնոյն ինքն հռչակեալն Պապառօն կամ Պապեռօն. զի թէպէտ արին այն և զգօն սպարապետ՝ բազմաց և այլոց բերդօրէից էր իշխեցող, այլ սեփական և նստոց իւր այս էր, և միշտ սորա տէր կոչէ զինքն. իսկ բերդն վկայի յամենայն յիշատակս՝ մակադրական անուամբ՝ անուր, անառիկ, անմատչելի: Յերից կողմանց գրեաթէ անմատոյց գոլով յարևելից հիւսիսոյ ընծայէ ելս և մուտս, և այն ընդ ուղի ջրամբարին, զի խանգարեալ է յատուկ շաւիղ վերելիցն, որպէս և աւագ դուռնն որ յարևմտակողմն էր՝ կործանեալ անկեալ է: Ջրամբարս այս 'ի քարայրի՝ 'ի ձախմէ վերելիցն՝ 'ի ստորին կողմն բերդին, կարի ընդարձակ է, և 25 աստիճանօք իջանելի. յաջմէ նորին են քարակտուր սանդուղք 'ի սեաւ վիմէ, 142 աստիճանօք ուղղամբարձ, և ապա սակաւ ինչ խոտորեալ՝ հնգետասան աստիճանք ևս [2] հանեն 'ի սենեակ մի պահանորդաց, որպէս համարի միակ քննող և ծանօթարար տեղւոյս՝ հնախոյզն Հ. Կղեմէս Սիպիլեան, ('ի 28-9 հոկտ. 1875 ամի, ուղէկցութեամբ Anccetill Անգղիացւոյ), այսպէս գուշակելով 'ի դրիցն և 'ի ձևոյ պատուհանացն: Սուղ ինչ ևս վերագոյն է տափարակ գագաթն լերինն ձուաձև բոլորչի, իբր 500 Զ. ընդ երկայնն և 300 ընդ լայն, դերբուկօք և մացառօք ծածկեալ: Մնացորդք դղեկին և եկեղեցւոյն են յարևմտակողմն, 'ի հիւսիսոյ կուսէ ունելով զմուտսն. յորս երևին սենեակք երկու՝ 'ի վախճան գահի, 'ի միումն նստարան քարատաշ, և ըստ Էնքըրթիլայ վառարան գեղաքանդակ [3]. գոյ և 'ի դաշտակողմանն միւս ևս այլ ջրամբար քարափոր՝ տասըն Զ. կամ աւելի խորութեամբ, և 15 Զ. ընդ երկայնն, 'ի միոյ ևեթ կողմանէ որմափակեալ: Թէպէտ և չիք այլ շինուած կանգուն, և եկեղեցւոյն իսկ միայն կամար խորանին մնայ 'ի կայի, այլ բարձրութիւն կերտուածոյն և նրբութիւն քանդակաց դրանն, մնացուածք նկարուց յորմունս [4], հանդերձ ահաւորահայեաց դրիւքն, և որ շուրջ զիւրև տեսարանաւն, ոչ միայն զամրութեան տան նշանակս, այլ և զճարտարութեան և ճոխութեան շինողացն և իշխողաց տեղւոյն: Առաջին հիմնարկու սորին յայտ է թէ նախ քան զգալուստ մերազնեայցս էր, 'ի Յունաց Բիւզանդացւոց, կամ 'ի հնագունից ևս. այլ 'ի պատմութեան նոցին՝ կարծեմ անյիշատակ մնայ մինչև 'ի կէս ԺԱ դարու. յորում՝ յառաջ քան զՌուբինեանս և առ կենդանեաւ իսկ Գագկայ վերջնոյ Բագրատունեաց թագաւորի, մի 'ի սակաւուց և 'ի գլխաւոր կալուածոց մերազգեացս եղև սա, 'ի հպատակութեան կայսերաց Կ. Պօլսի. քանզի որպէս վկայանէ գեղեցիկ յիշատակագիր Սաղմոսամեկնչի Ս. Լամբրոնացւոյն՝ վանական նորին Սամուէլ վարդապետ. « Այր ոմն յիշխանացն Հա-

1 Ըստ Տէվիտայ:
2 Էնքըրթիլ ընդ բնաւ 172 աստիճանս ասէ:
3 A beautifully-carved stone chimney-piece in fine preservation.
4 Traces of fresco painting are visible on the walls of the interior, and the masonry is of admirable workmanship, especially the stonework of the door.





*Մատուռնը Պապեռօն բերդի.*

» յոց՝ Ապլխարիպ անուն (որդի Հասանայ, որդւոյ Խուլ » Խաչկի զօրավարի), որ էր 'ի տանէն Վասպուրականի, » իբրև զմտերիմ և զխոհեմ և զայր 'ի գործս պատերազ» մի, առաքեցաւ յինքնակալէն Աղեքսէ 'ի գաւառս Կի» լիկեցւոց, իշխել մայրաքաղաքին Տարսոնի և Մամեստիոյ։... Սա եգիտ 'ի ստորոտ լերինն Տորոսի և 'ի գլուխ » քաղաքիս Տարսոնի՝ երկու անմատոյց դղեակս, միոյն » անուն Լամբրոն և միւսոյն Պապեռոն. որք և ունէին » շուրջ զինքեամբք գեօղս և աւանս. զՊապեռոն իւր սե» փականեաց գանձուց շտեմարան. և չլինեալ եկեղեցի » մեծ՝ դամբարանս հանգստեան սահմանեաց իւր և իւ» րոցն. և... Ապլխարիպայ վախճանեալ՝ եդաւ 'ի Պա» պեռոն »։ Ի նախորդաց Աղեքսի Թուի կարգեալ Ապըլղարիպ իշխան Տարսոնի. քանզի Աղեքս Թագաւորեաց յամի 1081. իսկ ամաք յառաջ քան զայս Թուական եղև գալուստ Գագկայ առ Ապլղարիպ՝ վասն փեսայացուցանելոյ 'ի դուստր նորա զորդին իւր կրսեր, և 'ի չյաջողել իրացն, կամ 'ի բանտել անորոյն զփեսայացեալն, սրտմըտութեամբ դառնալ անտի և եղերական մահու հանդիպել, յամի 1079։ Ապլղարիպ ոչ ունելով զաւակ արու՝ աւանդեաց զիշխանութիւնն 'ի Սահակ ոմն յաւագաց իւրոց, որ էր փեսայ Օշնի՝ նախահօր Հեթմեանց տոհմի կամ իշխողաց Լամբրոնի, զոր՝ ինքն Ապլղարիպ տուեալ էր նմա 'ի գալն նորա յերկրէն Արցախոյ, զի էր իւր մտերիմ և սիրելի. յորոյ և 'ի զարմ էանց ժառանգութիւն բերդին. այլ ոչ է յայտ երբ և ո՛յր նախ 'ի Հեթմեանց տիրացեալ նմին. բայց միայն զի և յառաջ քան զկէս ԺԲ դարու էր 'ի ձեռս սոցա. քանզի յայնժամ տէր Պապեռոնի էր Սմբատ եղբայր Բ Օշնի, հօր Ս. Ներսեսի, և Թոռն Ա. Օշնի, և յամի 1151 սպանաւ 'ի մարտի առ դրամբ Մոպսուեստոյ, զինուորեալ ընդ Յունաց ընդդէմ Ռուբինեանն Թորոսի Բ։ Յաջորդեաց նմա որդի իւր Բակուրան, զորոյ զքոյրն՝ Ռիթա առեալ էր 'ի կնութիւն Ստեֆանէ եղբայրն Թորոսի. և յորժամ մեռան սոքա և բըռնակալեաց եղբայր նոցին դժխեմն Մլեհ, Ռիթայ առեալ զորդիս իւր՝ զՌուբէն (Բ) և զԼևոն (Ա. Թագաւոր) « գնաց » 'ի Պապեռոնն՝ առ եղբայրն իւր Բակուրան, և անդ » նստեալ սնուցանէր զնոսա. և էր բարեպաշտօն և ի» մաստուն կինն այն և երկեղած 'ի Տեառնէ, որոյ կոչէր » անուն Ըռիթա։... Եւ Բակուրան տէրն Պապեռոնին » էր այր բարի և առատ, և բարերարոյ առ ամենայն ոք. » և սիրելի Աստուծոյ և մարդկան. որոյ յիշատակն օր» հնութեամբ եղիցի »։ Ազնուութեան Բակուրանայ ցոյց և արդիւն է խնամատարութիւնն 'ի վերայ Թոռանց հակառակորդի հօրն իւրոյ և պատճառի մահուան նորա. Նովին խնամով և յօժարութեամբ յետ եօթն ամաց, իբրև սպանին իշխանք Հայոց զՄլեհ, և խնդրեցին 'ի Բակուրանայ զՌուբէն, արձակեաց, « բազում գանձիւք ոսկւոյ » և արծաթոյ »։ Չիք երկբայել թէ առաւել ևս պատուասիրեաց յետոյ զկրսերն Լևոն՝ 'ի բարձրանալ նորա յարքունական գահ, յորոյ հանդիսակացս յիշի իսկ յամի 1199, երկարակեաց լինելով։ Թուի յետ նորա Վասակայ եղբօր իւրոյ ժառանգեալ զՊապեռոն, և ժառանգեցուցեալ որդւոյ իւրում մեծանուանն Կոստանդնի Թագաւորահօր, որ և յետոյ ընդ սպարապետութեանն աւանդեաց զսեփական զայս հայրենի կալուած՝ անդրանկան իւրում քաջահռչակն Սմբատայ Գունդստապլի (ծն. 1208 † 1276). ընդ սմա՝ հանգոյն զինուորականդ մականուան՝ սերտագոյնս կապեալ է անուն տեղւոյս՝ քան ընդ այլոյ ումեք։ Այս Սմբատ է գերագոյն անուն և այր յամենայն Թագաւորութեան Հայոց՝ յետ Մեծին Լևոնի և Կոստանդեայ հօր իւրոյ, և զուգափառ հարազատին իւրում Հեթմոյ Ա., գերազանցեալ քան զսա քաջութեամբ, և առաւելեալ իմաստասէր հանճարովն. որում վկայ Պատմութիւն տէրութեան իւրեանց, յերիւրումն Օրինագրոց ըստ Մխիթարայ Գօշի, Թարգմանութիւն Ասիզաց Անտիոքայ, Թուղթն գրեալ առ քեռայր իւր Թագաւոր Կիպրոսի, մատեանքն հրամանաւ իւրով ընդօրինակեալք, յորս և խնկագիր յիշատակք իւր չափաբանեալք և արձակք, յորոց է ինչ որ եհաս և 'ի մեր տես. ուր և պանծալով իմն գրէ յամի 1241 ('ի հաւաքման գրոց Ստորոգութեանց Արիստոտելի և Գրիգորի Նիւսացւոյ).

« Զոր ժողովեալ 'ի մի տեղիս
Յարմարեցի 'ի պատեհիս.
Ես մեղաւորս և ողբալիս
Տըրուպ զինուորս և եղկելիս,
Սմբատ անուն իմ Հայկազնիս,
Տէր և Պարոն Պապեռոնիս,
Եղբայր Հեթմոյ Թագաւորիս
Եւ սպարապետ Հայոց գնդիս »։

Անցեալ էր 'ի ձեռս նորա և ձեռնագիր Սրբոյ Լամբրոնացւոյն՝ մատեան Պարապմանց Կիւրղի և Ս. Դիոնեսիոսի, յորոյ 'ի ստորև միոյ խզիցն գրեալ է և ինքն շղաձև, զայս ձև օրինակի.

վրիպեալ Դ տառի։ Այսպէս և 'ի յառաջաբանի Թարգմանութեան Ասիզացն. « Ես Սմբատ ծառայ Աստուծոյ » և Գունդստապլ Հայոց և որդի Կոստանդեայ և եղբայր » բարեպաշտ Թագաւորին Հայոց Հեթմոյ և Տէր Պապեռօնին ». որում համաձայն և Նախաբան Օրինագրոցն՝ զոր յարմարեաց յամի 1265. և յետ ամաց, (1269), գրէ զայս երկար ոտանաւոր և կարևոր յիշատակ՝ 'ի ճաշոց գիրս, յոր և ժառանգք նորա յետոյ յաւելեալ են ինչ ինչ.

Փառք Աստուծոյ ամենայնի
Գոյիցս էիցս արարողի,
Որ ինքն է մէն մ' այլ չլինի.
Տէր եւ պարոն անփոխելի.
Ի Թվականիս Հայոց գրի
Ցխաւթն հարոյր տասնիւթի.

Եսամէատահայկազն ի[1]
ծառայսեհողաւքեիտոս ի
եէապայապետհայոց՝ գրեց ի

Անդրանիկ հայրն իմ Կոստանդնի
Եղբայր Հեթմոյ Թագաւորի.
Որ ցանգագա եւ սիրեցի
Ըզմայրն իմ զուրբ եկեղեցի.
Եւ զինչ 'ի նմա իսկ ընթեռնի
Ամբողջ 'ի լման 'ի մէկ տարի
Զամէնն 'ի սմա հավաքեցի.
Հանց որ ով ոք զսա ունի
Նա բնաւ 'ի յայլ գիրք չունգի[2]:
  Բայց եւ զայս այլ գրել պիտի
Թէ երբ սկսաք կամ կատրեցի
Զաստուածային տառս 'ի կարգի:
Սկիզբն էր 'ի չար ժամանակի,
Երբ Մօրցին եկն 'ի Մսաի
Վ' եսպան զԹորոս Թագվորորդի
Եւ այլք բազումք 'ի նոյն զկնի,
Վ' այրեց ըզՍիս եւ զՄսիս
Եւ զինչ որ չէն կայր 'ի միջի.
Եւ ըզԼեւոն ավագ որդի
Հեթմոյ Հայոց մեծ արքայի՝
Տարաւ ծառա վ' եդ 'ի բանդի
Ի քաղաքին Եգիպտոսի:
Բայց զո՞ր ածեմ աստ 'ի գրի
Զառ եւ աւար եւ զարդյննի
Կամ ըզհամարքն ծառայի
Զորս ըստ մեղաց եհաս երկրի.
Որ թէ զամէնն գրել էի՝
Նա չատ առնոյր թուխթ եւ տեղի:
Բայց յաջողմամբն Քրիստոսի
Ի վերոյգրեալն թվականի
Որ զընթերցվածքս կատրեցի,
Ձեռամբ գրչին Կիրակոսի,
Զերծաւ Լեւոն Թագվորորդի
Վ' երեկ 'ի յիր տուն եւ տեղի:
  Եւ զայս ձեռամբ իմով գրեցի
Ձի յիշատակ ինձ եղիցի

Տրուպ եւ անզեղջ մեղաւորի
Սմբատայ Գունդուստապլի.
Հաւր իմոյ Կոստանդնի
Եւ մաւր իմոյ Տամա Վիծի,
Եղբարց եւ քերց նաեւ ազգի.
Զնոյն եւ որդւոց իմոց զկնի,
Հեթմոյ Աւշնի եւ Կոստընդնի,
Եւ մաւր սոցին Թէֆանաւի:
  Որ որ զԹան վ' ասեն բարի
Կամ ըղձալից Տէր ողորմի,
Նա 'ռատաձիր Տէրն ամենի
Բազմապատիկ տա իր բարի
Աստ 'ի ներկայս այժմ եւ զկնի:

Այս յիշատակարան ծանոյց մեզ զանուանս մօրն՝ Տամա Վիծի, կնոջն՝ Թէֆանոյ, զորդւոցն Հեթում, Աշին և Կոստանդին. մի 'ի յետնոց երկուցն անչուշտ ժառանգեաց զՊապեռօն, զի Հեթում մեռաւ առաջի հօրն յամի 1270. եղև նորա և այլ որդի՝ անուն Վասիլ և մականուն Թաթար, զի ծնեալ էր 'ի Թաթար կնոջէն՝ զոր ըստ հրաման գաց պատուի Թաթարաց ետ նմա Մանգու Ղան 'ի գալ նորա առ ինքն դեսպանութեամբ (1248) 'ի դրանէ եղբօրըն (Հեթմոյ Ա.). Վասիլ ընդ Լևոնի արքայորդւոյ գերի վարեցաւ յԵգիպտոս (1266) և ընդ նմին դարձաւ. և յետ սակաւուց վախճանեցաւ, զկնի երկու և կէս ամսոց մահուան եղբօր իւրոյ Հեթմոյ, ընդ որում և ձիաւորեալ էր մեծաչուք հանդիսիւ յաւուր զատկի յամի 1264. և երկոքեան 'ի մի վիրս հայրենական քնարանի իւրեանց հանգուցան, 'ի վանս Մլիճոյ: Իսկ առաքինազօր և բազմարդիւն հայր իւրեանց Սմբատ՝ յետուն ամ վարեալ փառաց զսպարապետութեան գործ, արժանի զինուորական քաջութեանն ընկալաւ և վախճան, արիապէս մղելով պատերազմ ընդ այլազգիս 'ի սահմանս Սարվանդաւի, և վանելով ընդ կողմն Մարաշոյ. այլ « յորժամ եւ 'ի պա» տերազմէն, երիվարն հարեալ զնա ընդ ծառոյ միոջ ոչ » կարաց տանել ցաւուն, քանզի յոյժ ծերացեալ էր. » գնաց 'ի Սիս, և սակաւ ինչ ապրեալ՝ բարի խոստովա» նութեամբ ննջեաց ընդ հարսն իւր՝ 'ի Քրիստոս Յի» սուս »[3]. յամսեան մարտի, 1276 ամի, ամաց գոլով եօթանասուն, միով պակաս. վասն որոյ ոչ միայն արիական այլ և նահատակական համարին ազգայինք զմահ նորա, և ընդ երկրաւորացն՝ անթառամ դափնեօք զուգապսակ:

1 Վերջատառքն է քանզի բացագոյն գրեալ էին 'ի բնագրին՝ ճարտարն նմանահանող մռացութեամբ զանց արարեալ էր զնոքօք:
2 Այսինքն է՝ չկարօտի այլոց ինչ եկեղեցական գրոց:
3 Զոր համառօտիւ նշանակէ զօրինակ մահուն՝ յիշատակագիրդ, այլ ոք ճարտարագոյն և ճոխագոյն բանիւք դրուագէ. այլ, ասող, զի Թերի միան բանքն, Թափեալ գոլով յետին Թղթոց որրազան մատեանին, զոր ինքն Սմբատ ետ գրել և զարդարել երանգ երանգ գունովք և ձեօք, և ոչ ժամանեաց զաւարտն « 'ի կեանսն իւր տեսա» նել, համայնիւ խոհեմն այն ծերունին՝ մեծիմաստն Սմբատ: Զի » յամսն յայնոսիկ յարձակմունք քրիստոսատեացն Տաճկաց 'ի տա» նէն Շամայ Դամասկոսի և Եգիպտոսի՝ միահեծանեալ բռնակա» լութիւն խստասիրտ երկրորդն Փարաւոնի Մէլէք Տահր Պուխ» տարն կոչեցեալ, արագ արագ իբր զքանասար գայլս արշաւէին 'ի » կողմանս Սեաւն կոչեցեալ լերին: Եւ յաւուր միում պատահեալ » քաջն Սմբատ որդւովք և յոլով համազնեայ նիզակակցօք, աւ» քայիւն իսկ, յակամայ կամս և յանկարծ վայրս անզգուշաբար » դիպեալ բազում և քաջազէն գնդի Թշնամեացն, զորընԹաց մե» րային որեարսն զանեալ հարուածիւք յետսկոյս փախստեայ դար» ձուցին, սպանեալ զոմանս. զոր տեսեալ մեծն Սմբատ, հապա » զԹափ երիվարին տուեալ, և մեծաձայն բարբառով 'ի նիզակա» կցուԹիւն զՔրիստոս Թագաւորն կարդացեալ, իւրայովքն առիւ» ծաբար յարձակեալ 'ի նոսա, և իբր զերամակս ցռուց զիրեարս՝ » զնոսա հարեալ 'ի սուր սուսերի մաշեալ, որ անդն էին՝ սպան զնո» սա: Ցորում վայրի խաղացին 'ի մերան բացակայ գունդք Թշնա» մեացն՝ իբր զփոշի 'ի հողմոյ բերեալ, կամ զաւագ յալեաց դի» զեալ. յոլովք 'ի քրիստոսասէր աւագայնւոյն Հայոց վախճանեալք՝ » անԹառամն արժանացեալ զտան պսակի: Իսկ քաջն սպարապետ, » մեծ ոճիրս 'ի պատահեալսն իւր գործէր. ուր արագ հաւաքեալք » նախկի արեան քաջին ծարաւիք՝ իբր զոտապարաւորս 'ի փայտա» հարս յարձակեալք 'ի նա՝ ցուլքն գէրք և չունքն բազումք՝ շրջա» պատէին. յորոց ոչ սակաւս սատակեաց արին այն քաջս . . . . .
. . . . . . . . . . . . . .

— Ոչ յիշեն ժամանակագիրք զտեղի Թաղման քաջին, այլ հաւանօրէն նախայիշեալ վանքն էր, ուր որդիքն կան-խաքուն ննջէին, և զոր յիշատակագիր ոմն անդստին յա-մի 1198՝ կոչէ « Դամբարան իշխողաց ամուր դղեկին Պա-» պառոնի »։ — Թէպէտ և համարեցաք Օշնի կամ Կոս-տանդեայ որդւոց Նորա յաջորդեալ 'ի տիրութիւն դղե-կին, այլ 'ի գրոց ոչ հաւաստի, և ոչ զաւակք յիշին սոցա, գուցէ արագավախճան եղեալք ըստ նախագրելոցն. այլ հաւանօրէն միւս ևս որդի Նորա Լեւոն՝ պայազատեաց, որ և իբր Գունդստապլ յիշի յամի 1289, որպէս և սորա որդի Սմբատ (Բ) Գունդստապլ, յամի 1320. բայց յետ ոչ բազում ամաց, այն է յամի 1296, տէր Պապառօնի էր արքայորդին Թորոս՝ եղբայր Հեթմոյ Բ։ Յայտ ուրեմն է զի յարքունիս գրաւեալ էր բերդն յայնժամ, որ և 'ի քա-հանայապետական դիւանացն Վատիկանի ստուգի. զի Լեւոն Դ 'ի սկզբան թագաւորութեանն՝ հաւանութեամբ խնամակալին իւրոյ Հեթմոյ՝ տեառն Նղրոյ, ետ զայն իբրև լոկ կալուած՝ աներոյ իւրում Օշնի տեառն Կոռիկո-սոյ՝ որդւոյ Պատմչին Հեթմոյ, որ առեալ էր 'ի կին զդըշ-խոյ մայր թագաւորին՝ Յովհաննա, եդեալ պայման՝ զի թէ սա ոչ ծնցի զաւակ արու յՕշնէ, յետ մահուան Օշնի դարձցի անդրէն բերդն յարքունիս. և զպայմանագիրն առաքեալ էին առ Յովհաննէս ԻԲ քահանայապետ՝ վա-ւերացուցանել և իւրովանն։ Իսկ սա հարցանէր Թղթով (17 մարտի, 1323) զՊետրոս պատրիարք Երուսաղեմի գիրացն, և պատուիրէր քննել և ստուգել, զի ըստ այնմ տնօրինեսցէ։ Յետ իբր ամի և կիսոյ (9 օգոստոս 1324) դարձեալ գրէր քահանայապետն առ Բարսեղ արքեպիս-կոպոս Տարսոնի, յիշելով և զմահ թագուհւոյն Յովհան-նայ՝ կնոջն Օշնի՝ յայն միջոց ժամանակի, և պատուիրէր քննել զվերոյգրեալսն, և եթէ պատշաճ դատիցի՝ ինքնին վաւերացուցանել զդաշինսն։ Ի լատիներէն Թղթի անդ՝ Castrum de Baberon կամ Baberom գրի[1]։

Յորժամ սպանաւ Օշին (1329) հրամանաւ Լեւոնի, յար-քունիս դարձաւ բերդն. զորոյ՝ յայսմ Թուականէ և անդր ոչ գտանեմ յիշատակ 'ի գիրս, և հարկ է թէ զմերձա-կայիցն կրեաց զբաղդ, մատնութեամբ յայլազգի ձեռս և յաւեր նոցին և ժամանակի։ — Քաջադրոշմ քան զայլս 'ի ծանօթ մեզ յիշատակաց Սմբատայ՝ միայ արձանագիր նախայիշեալ եկեղեցւոյ Զանտըր բերդի, յահեկէ դրանն արտաքուստ, բարձրաքանդակ տառիւք. սակայն ստորին մասն արձանագրին խանգարեալ է, որպէս ասեն, 'ի հրկիզութենէ թփոց 'ի նոյն կաւելոց. և է ըստ այսմ օրինակի որչափ ինչ միայն, գրեալ յամի իբր և 1256, կամ 1251. բայց ընթերցուածն կրկին քննութեան կարօտի.

« Շինեալ զտաճարս բնակարան
Երրորդութեանըն միական,
Աստուածընկալ տուն եւ սեղան,
Տեղ աղաւթից եւ լուացարան
Այնոց մեղացն որք հաւատան
Հայցել 'ի սա դեղ մաքրութեան.
Յորս? Թագ(ւոր) 'ի Հայաստան
Հեթում եղբայրս իմ պանծական.
Ստացայ շինել վէմ գլուխ անկեան
Բազում ծախիւք եւ սրբաքան[2].
Սմբատ անունս Հայկազան,
Տէր դղեկիս հայրենական
Եւ գունդուստապլըս զինական։
Զորս աղաչեմ զամենեսեան
Բարեխաւսել (միաբերան.)
Յիշել զծնողս իմ. . . . .[3]
Զկոստանդինս մեծ իշխան,
Զեղբայր զորդի եւ զազգական։
Եւ պարգեւողն առատական
. . . . . . . .
Ի մեծ Թվականս Չ եւ Ե?[4]
Ի Ռուբինեան զարմէն տենչական[5]
. . . . . . . . զայս բան.
Որ զիս յիշէք յետ հանգստեան »։

Պաշարումն կամ առումն Պապառօնի ոչ յիշի 'ի պատ-մութեան, առ որ չներէր իսկ անմատոյց ամրութիւն նո-րին. այլ միայն զի յամի 1245 Քէյ Խոսրով սուլտան Ի-կոնիոնի առ քէն վրիժու Հեթմոյ, վասն մատնելոյ սորա 'ի Թաթարս զապաւինեալն 'ի նա զկինն կամ զդուստր իւր, « առաջնորդութեամբ Պարոն Կոստանդեայ՝ Լամ-» բրոնի տիրոջն՝ մտաւ ընդ Պապառօնին յեառն 'ի վայր, » ու այրեաց զամէնն », և գնաց պաշարել զՏարսոն։ Արդ 'ի բանիս յիշեալ լեառնն յանուն բերդին՝ ոչ յարմարի դրից Զանտըրի, զոր բոլորշի և զատուցեալ յայլոց լե-րանց ասէ ծանուցողն (Հ. Սիպիլեան). վասն որոյ փա-փագելի միայ անդորրագոյն հետազօտութիւն տեղւոյն և դերրկացն, գուցէ այլ արձանագիր հանցէ զստուգու-թիւն։ Բայց ոչ երկբայիմ՝ զի թէ ոչ 'ի Զանտըր, այլ հարկ է 'ի մերձակայ սահմանս նորին և ոչ շատ հեռի 'ի Տար-սոնէ լինել. քանզի աթոռ սեփական առաջնորդաց սո-

1 Ex parte dilecti filii nobilis viri *Ossini* Comitis Curchi, et carissime in Christo filie nostre *Johanne* Regine Armenie illustris, consortis ejusdem Comitis, fuit expositum coram nobis, quod carissimus in Christo filius Noster *Leo* Rex Armeniorum Illustris, volens certis considerationibus, eosdem Comitem et Reginam liberaliter magnificentie Regie prevenire, de consensu et voluntate filii nostris nobilis viri Aitonii de Negrino Bajuli et tutoris sui, *Castrum de Baberom* cum omnibus juribus, casalibus et pertinenciis suis in feudum et jure feudi prefatis Comiti et Regine, ac proli masculini ex ipsis legitime descendenti dedit, tradidit et concessit: hac tamen conditione adjecta, quod si prefatam Reginam absque prole masculina ab eodem Comite legitime procreata descedere contingerit, dictus Comes Castrum predictum cum juribus et pertinentiis suis ad vitam suam dumtaxat teneat; post ejus obitum ad eundem Regem suosque heredes et successores in tali casu libere reversurum; sicut in litteris et scripturis super hoc plenius dicitur contineri....
Datum Avinione. XIV Kal. Aprilis, anno septimo pontif. Nostri. — Joh. XXII. Epist. 1138. Tom. III. Fol. 273.

2 Հաւանելի եւս է սրբարան։

3 Ընդօրինակողն Հ. Կղեմէս երկբայութեամբ գրէ « Յիշեա և » զծնողս իմ. . . . . ամաց այսր »? Թերեւս՝ Յիշել զծնողս իմ համանգամայն։

4 Առ հաւաստութիւն չափոյ ոտից բանին՝ կարծելի էր ըն-թեռնուլ Եօթնհարիւրեան, որ լինի ամ 1251 Թուականին Քրիստոսի։

5 Վանկ մի աւելի է 'ի տողիս։

րին՝ էր Դամբարանն այն տեարց Պապեռոնի, վանք Մլիճոյ, և հարկ էր սմա՝ երկոցուն ևս տեղեացն, այսինքն մայրաքաղաքին և դղեկին, մերձաւոր կամ ընդ մէջ գոլ, և յաւէտ երկրորդիս հպագոյն։

23. Եւ էր մի 'ի նշանաւոր վանորէից Սիսուանայ վանքըս այս Մլիճոյ կամ Մլիճի, զի յերկոսին ևս յեղանակըս գրի, միշտ 'ի սեռականն հոլովեալ, որով և ոչ է յայտ ՄԷ՞Ճ ԹԷ Մլիճ կոչէլի իցէ յուղղականն. անյայտ է և ժամանակ շինութեանն. բայց մի 'ի հնագունիցն է յաշխարհիս, և հաւանօրէն հաստատեալ 'ի նմին իսկ Ապլղարիպայ, զորմէ եցոյց վերագոյն բանս՝ 'ի սեփականելն ինքեան զՊապեռօն, շինեալ 'ի նմին և եկեղեցի մեծ 'ի դամբարան իւրոյ տոհմին. և զդամբարանս տերանց դղեկիս՝ ահա ցուցին յետագայք լինել 'ի սոյն վանս Մլիճոյ. որպէս և գտանի այս աւանդեալ նախ 'ի պատուական աւետարանի միում, յամին 1198, որոյ գրութիւն եղև « սկզբնաւորեալ 'ի մեծանուն Անապատ Մըլիճի, ընդ հովանեաւ Սրբոյ Աստուածածնին, որ է դամբարան իշխողաց ամուր դղեկին Պապառօնի »։ Ցայնմ ամի առաջնորդ ուխտին՝ միանգամայն և արքեպիսկոպոս Տարսոնի, անընդմէջ յաջորդ Ներսիսի Լամբրոնացւոյ՝ գոլ վկայի 'ի պատմչէն՝ Ստեփանոս։ Զկնի երկրայել զի Ապլղարիպ, Սմբատ, Բակուրան և այլ տեարք Պապառօնի հանգուցեալ են 'ի սեփական դամբարանի աստ իւրեանց, որպէս և ոմանք 'ի մերձաւորաց նոցին, նախայիշեալքն Հեթում և Վասիլ՝ որդիք քաջին Սմբատայ Գունդստապլի, բազում հաւանութեամբ և ինքն, և եղբայր իւր կրտսեր Լևոն († 1258), տարաժամ խամրեալ հիւանդութեամբ, մինչ հանդերձեալ զպէտս հարսանեացն՝ « Ոսայր հողմոյն » հիւսիսոյ » նաւել 'ի Կիպրոս, և ածել իւր կենակից. » և զմարմինն տարեալ 'ի սուրբ ուխտն Մլիճին, որ մերձ » է 'ի Պապեռօնն, և անդ հանգուցին »[1]։ — Ի սակաւ յիշատակս տեղւոյս՝ Ոսայ դժնդակ մի, գերութիւն աւագի տեղւոյն, որպէս գրէ յաւելիչ ժամանակագրութեան Անեցւոյն, 'ի Թուրքաց կողմանցն Իկոնիոնի, որք և սպանին անդ ոգիս երեք կամ աւելի։ — Ցետ սակաւ ամաց (1283) Մատթէ ոմն քահանայ՝ որ գնաց յարևելս յաստուածային առ ոտս հռչակելոյն Եսայեայ Նչեցւոյ, առէ չափական բանիւ զանձնէ և զտեղւոյս, գոլ

« Ի նահանգէն Կիլիկեցի
Ուստի և փողն Տարսոնեցի.
Ցանապատէ հռչակելի
Որ յորջորջի յանուն Մլիճի.
Է 'ի ստորոտըն Տաւրոսի
Լերին մեծի և անուանի,
Մերձ 'ի դղեակ Պապեռօնի,
Առ սահմանօքըն Տարսոնի »։

Նմանօրինակ բանիւք գրէ նա և յերկրորդում ամի յիշատակարան՝ յայլ գիրս իւր։ — Ցելս կոյս դարուն (ԺԳ) և 'ի սկիզբն յաջորդին առաջնորդ ուխտին և ապա արքեպիսկոպոս Տարսոնի՝ եկաց Ստեփանոս որդի Ամբակումայ կամ Պակէի († 1301), որոյ մտեալ յառաջն 'ի կարգ աշխարհի և ծնեալ էր որդիս. անդրանիկն կամ յառաջադէմ՝ Սիր Գրիգոր, նշանակէ 'ի լուսանցս մաշտոցի միոյ՝ զաւուրս ծննդեան և մահուան ընտանեացն[2]։ Իսկ ինքն Ստեփանոս արքեպիսկոպոս հանգչի 'ի Քրիստոս 'ի վեցն յունիսի 1320 ամին, որպէս գրէ որդին, նշանակելով և այլ ինչ դէպս։ Ի նոյն գիրս Մաշտոցի՝ յաւելեալ է Ստեփանոսի և յինքենէ կանոն մի՝ Նաւօրհնեաց, որպէս վայել էր ունել զայն՝ բնակելոցն 'ի ծովեզերս Միջերկրականի. « և հաւատացաք, ասէ գրիչն, թէ յԱստուծոյ է պարգևքս այս, զոր Հոգին Սուրբ տպաւորեաց 'ի միտս նորա, զի այս պակաս էր 'ի գրոց. և զանուն նորա մի պակասեցուցանէք 'ի գրելեացս, զի վարձս առցուք յԱստուծոյ »։ — Սորին Ստեփանոսի հրամանաւ գրեալ է և Ցաճախապատում գիրք Ս. Լուսաւորչին, որոյ գաղափար ընծայեցաւ տպագրութեամբ 'ի Կ. Պօլիս՝ յամի 1737. զորմէ ասէ գրիչն. « Այս յոգներանեան տէրս մեր և առաջնորդ սուրբ ուխտիս Մլիճոյ՝ տէր Ստեփաննոս արհիեպիսկոպոս՝ ետ գրել զսա... » և եդ ընդ այլ գրեանսն սուրբ ուխտիս. որ և բազում ինչ յաւել սա յաւուրս մեր 'ի սուրբ վանս Մլիճոյ. որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի »։ Մի 'ի գրենոյն է և Պրոխօռոն, այսինքն վարք Յովհաննու Աւետարանչի, որ արդ պահի 'ի Բրիտանական Թանգարանի, գրեալ յամի 1307, 'ի Կոստանդեայ քահանայէ. « Ի սուրբ ուխտս » Մլիճի. ընդ հովանեաւ Տիրաւոր Ս. Աստուածածնի և » այլ սրբոցս, մօտ յանառիկ դղեակս Պապառօն »[3]։

24. Ժամու կամ աւելի հեռի 'ի հարաւոյ արևմտից Զանտըր բերդի՝ լերինք պարսպեն զհոսանս Ջաղացաձորոյն (Տէկիրմէն տէրէսի), հազիւ կուռեան ստից թողլով յանցս. 'ի գեղադիտակ գագաթանդի լերին միոյ կան մնացուածք վիմափոր խցկանց մենաստանի, յոր տանի սրահակ մի խոր տասն ոտնաչափ և եթ լայնութեամբ, և մատուռն մի որ յերից կողմանց վախտւտ և անմատոյց էր, 'ի հիւսիսոյ կուսէ և եթ մատչելի. և կոչի արդ յայլազգեաց Գիլիսէ պօղազը կամ Քէլի պօղազը (Փող կամ Նեղուց Եկեղեցւոյ կամ Այծից)[4]։ Ի վերայ արտաքին որմոյ մատրանդ՝ որ կանգուն կայ՝ բաց 'ի տանեացն, փորեալ է եօթնևտասնտողեան կարևոր արձանագիր Կոստանդեայ

1 Արքունի Պատմիչն։

2 Օրինակ իմն. « Թու. ՉԽԲ (1293). մարտ ամսի 25, օրն չորեքշաբաթ, հանգեաւ 'ի Քրիստոս գեռաբոյս աղախինն Քրիստոսի » դուստրն իմ Զապլունն, անարատ ընծայ Աստուծոյ. որոյ ողորմեսցի նմա Քրիստոս, և յիշողացդ առ Քրիստոս »։ — « Թու. » Հայոց ՉԾԱ (1302) 'ի փետր. ԺԱ, օրն կիրակէ և առաւօտու, » հանգեաւ գեռաբոյս որդեակն իմ Ներսէս 'ի Քրիստոս, անարատ » ընծայ Աստուծոյ. որոյ ողորմութեանն Քրիստոսի արժանի եղիցի » սուրբ աղօթիւք յիշողացդ »։ Այսպէս զաւուրս մահուան հօր իւրոյ՝ 'ի սեպտ. 7, ՉԾ Թուին. « և յայս ամսոյս երեսունն օրն հանգեաւ եղբայրն իմ Մարտիրոս սարկաւագն 'ի Քրիստոս », և այլն։ Նշանուցանէ և զծննդոցն, զի անդրանիկն իւր ամաց գոլով 21 և ամսոց 7 յամի 1318, ծնանի զիւր անդրանիկն Ներսէս 'ի 29 հոկտ. և յորժամ լինի ամաց 22 և ամսոց հինգ ծնանի զորդին իւր Ճշմարտ-Յովհաննէս, և մաղթէ՝ զի « Աստուած տացէ սոցա՝ հօրն և որդւոյն՝ » կեանս անփորձ և տեսցեն զորդիս որդւոց իւրեանց »։

3 Ստէպ աղաչէ սա յիշել և զքորորդի իւր Թորոս, « մատաղահաս տարաժամ վախճանեալ». կամ « մատաղակտուր եղեալ » յաստեացս՝ յանանց կեանս »։ Այլուր յիշէ զհայր իւր համանուն և համաստիճան՝ Կոստանդ քահանայ, զմայրն՝ Վալուրջ, զքոյր՝ Շահանդուխտ, զքեռին՝ Գրիգոր կրօնաւոր, և զհօրեղբայրն՝ Թէֆանու։

4 Տեսցի յետոյ յիշեալն 'ի Պատմչէն Փող Էկինջէ, յայնկոյս լերանցն, 'ի սահմանս Ադանայ։

արքայահօր. զոր՝ վասն դժուարութեան ափափայիցն՝ 'ի բացուստ հեռադիտակաւ զննելով Հ. Կղեմայ Սիպի- լեան, և վաստակեալ աւելի քան զերկոտասան ժամս (յաւուրս երկուս), ընդօրինակեաց այսպէս.

« Շինեցաւ տաճարս Սուրբ Փրկչին եւ Աննապատս հրամանաւ եւ ծախիւք Թագաւորահօրն Կոստ. իւր տուն աղաւթից — ըստ Տեառն հրամանի, Որ ոչ առնու զխաչ իւր եւ գայ զկնի իմ չէ ինձ արժանի. կամ Որ սիրէ զուստր եւ զդուստր իւր չէ — ինձ արժանի. Արդ սա բազում անգամ ի մահ եդեալ զանձն իւր վասն աշխարհիս եւ հանդարտութեան — եկեղեցեաց, ըստ այնմ Հովիւ քաջ զանձն իւր դնէ ի վերա ոչխարաց, ըստ Պաւղոսի թէ այնչափ սիրեաց — Աստուած մինչեւ զորդին իւր միածին ետ. սապէս եւ կամաւք Հոգ. վասն հաւատացելոց. եւ ինքն սիրեաց զմիա — յնանալ ընդ անձին եւ ընդ Աստուծոյ խաւսելով ըստ այնմ, թէ զանաւրէնութիւնս իմ պատմեցից եւ հոգացայց վասն մեղաց իմոց եւ թէ բա — րի է նստել լուռ եւ միայն ի տան, տալ հողոյ զբերան զի կա յոյս: Արդ ունէր սա Ե որդիս եւ Գ դուստր. զմի որդին ԱՎ Թգրեցուց Հայոց զպանծալին եւ զգեղաղէշն եւ զլին առաքինութեամբ զՀեթում. եւ զԲ որդին զԲարսեղ արքեպիսկոպոս

թգութեան. եւ զԳ որդին Սմբատ սպարապետ եւ զԴ — որդին Աւշին պայլ եւ Ե էր որդին Լէոն իշխանաց իշխան. եւ զՄարգարիտ դուստր յժբ տիս նա յարդարէ ի մարգա ..... (թա)գաւորութեան

Եւ զՍտեփանի[1] ամուսնացուցանէ ընդ թագաւորին Կիպրացոց. իսկ զԳ որդին[2] պարոնութեան պայլին Կիպրոսի որ էր տէր Պերութի եւ Յոպպէի.

Արդ նուաստս վարդապետաց Թադէի ձեռնաւուն որդի գոլով Հեթ. թգ. եւ հրամայեաց մերում տրպութեան սկիզբն առ — նել այսմ անապատիս վասն անձին իւրոյ ի բաց ելա(նել 'ի).. ստորաքարշութենէ կենցաղոյս եւ վասն հոգւոյ հոգալ:

Եւ ես հնազանդ կամաւք կատարեցի զհրամայեալն ինձ եւ ի յանդ ել միայնարանս. — Արդ աղաչեմ զամենեսեան վասն Ա.յ որք հանդիպիք կամ բնակիք աստ, զյառաջասացեալ իշխանաց իշխան զԹգահայրն Կոստ. յիշեսջիք աղաւթիւք հանդերձ որդւովք եւ զարմիւք եւ զմիաբան.... Նուաստութեան? զի բազումս տառապեցա թէպէտ եւ ծախքն արքունական էր այլ տեղս դժուար եւ ես ցաւոտ անձամբ վասն յուսոյ եւ յարութեան — յաւժար կամաւք աշխատէի. աղաչեմ անտես չառնել զմիանձնս (որք յան)ապատի ...... Եւ Տէր Յիսուս ամենեցուն ողորմեսցի. ամէն:

Պակասէ Թուական շինութեան վանացս կամ անապատիս, որ կարևոր յոյժ էր 'ի պէտս պատմութեան, առ 'ի ստուգութիւն զարմից կամ որդւոց Թագաւորահօրն Կոստանդեայ. և հարկ է համարել յառաջին ամս

[1] Հ. Կղեմէս. զիփփան կամ զբան:

[2] Իմա զերկրորդ դուստրն՝ զկոչեցեալն Մարիամ:

թագաւորութեան որդւոյ իւրոյ Հեթմոյ գրեալ, մինչև էին նորա այլ որդիք, կամ թէ կրսերք էին յոյժ տիօք. քանզի ոչ միայն ծանօթ է մեզ որդի նորա Յովհաննէս եպիսկոպոս՝ մկրտութեանն անուամբ Պաղտին, (որ և ինքնին ասէ զոլ համահայր եղբայր արքային Հեթմոյ, իսկ մայր ունել զՊէտադրիչէ, մինչ Հեթմոյ և այլոցն մայր կոչիւր Տամա Վիծի՝ դուստր Հեթմոյ՝ եղբօր Ս. Ներս. Լամբրոնեցւոյ), այլ յիշին և այլ ևս որդիք Կոստանդնի, թերևս համամարք Յովհաննու, Սիր Լիկոս, որ յամի 1256 հայր էր երից դստերաց և պատանեկի միոյ՝ Սիր Լէոն անուն. Վասակ, Տէր Ճանճոյ բերդի, որ յամի 1268 պատանդ առաքեցաւ յԵգիպտոս առ 'ի թափել զԼէոն՝ արքայորդի 'ի գերութենէ. դարձեալ և համանուն իւր Կոստանդին տէր Նղրի՝ հաւ Կոստանդնի Բ թագաւորի, կոչի որդի Կոստանդեայ Աւագ Պարոնի: — Այլ մեզ աստանօր շատ լիցի առ խնդիր տեղագրութեանս՝ գիտել զի Փրկչի անապատ կոչէր դժուարամատոյցս այս վայր, և հիմնող նորին՝ արքունի հրամանաւ և ծախիւք՝ Թադէոս վարդապետ, ձեռնասուն Հեթմոյ թագաւորի. բայց ոչ յաջորդք նորա յայտնի են մեզ և ոչ այլ ինչ յիշատակ վանատեղւոյս. այլ աներկբայապէս որիշ է սա 'ի Ս. Փրկչի վանաց կամ եկեղեցւոյն Սկեւռայ՝ 'ի հնագունէ:

Իսկ զահեղախառն գեղեցկութիւն վայրիս՝ 'ի վեր քան զբանի նկարագրութիւն, ասէ ուղէկից Սիպիլեանին. զի «առ ստորոտով ժայռիցն հոսի գետ մի ընթաց, յորոյ ափունս հովանանան սօսիք և արքականիք և ծաւալեալ »ծածկեն մարգագետինք. անդրագոյն ևս երկուստեք »գետափանցն՝ ամբառնան բարձրաբերձ քարաժայռք »անհեղեղք, և 'ի նոսին այրք անձեռագործք՝ համակ շըր»ջապատեալք եղևին ծառովք, որք յամենայն անկեանց »վիմացն 'ի վեր արձակին: Քաջափայլ երանգք ժայ»ռիցն, կարմիր, բոսորագոյն, դեղին, ծիրանի և գորշ, »ուրեք պայծառ և ուրեք աղօտ և յիրար խառնեալ, »յաւելուն մեծապէս 'ի գեղեցկութիւն տեսարանին»[1]:

Մինչև հեռացեալ 'ի վայրուցս, և մանաւանդ 'ի տերանց սոցին և 'ի գլխաւորէն՝ 'ի Սմբատայ մեծէ Գունդստապլէ, հաւանելի համարիմ ոչ հեռի և զդաստակերտ նորին զիւրանուն՝ Սմբատակլայ. զորմէ գրէ յամի 1241, 'ի նախայիշեալ իմաստասիրական գիրս՝ զոր ետն ընդօրինակել, և յոր յաւել ինքն յիշատակարան,

«Ի Հայ ազգիս թուականիս
Վեցհարիւր իննսներրորդիս
Գրեցի վատթար ձեռօքըս ես
Անչար ? ըզգիր յիշատակիս».

յորում յիշատակարանի՝ յետ ութից տողիցն՝ զոր կարգեցաք յէջ 71, (և քառանից ևս նախադրելոց), յաւէ

«Նոյն և շինող 'ի բնէն որմոյ
Զանառ դղեակն անմարտելիս,
Որ ըստ իմոյ անուանս եդի
Սմբատակլայ քաջ ամրոցիս»:

Ի սուղ բանից, որ և միակ առ 'ի նախնեաց մնացեալ յիշատակ է տեղւոյս, յայտ լինի զի բոլորովին իւր շինած է բերդն, այլ և հանգոյն Պապեռօնի 'ի քարուտ տեղւոջ բարձու, քանզի չասէ հիմնարկեալ այլ 'ի բնէ որմ[2] ածեալ. և երիւք մակադրութեամբք՝ անառ, անմարտելի և քաջ՝ հաստատէ արդարև յոյժ ամուր և անձեռնհաս զոլ թշնամեաց. սակայն որպէս ասացի, չունիմք 'ի պատմութենէ այլ ինչ ծանօթս. այլ միայն ինքն Սմբատ յիշի և յամի 1265 տէր զոլ տեղւոյս՝ ընդ Պապեռօնի և ընդ այլոց հնգից ամրոցաց. յետ նորա տէր Սմբատակլայի յիշի միայն թոռն իւր համանուն և համակարգ՝ գունդստապլն Սմբատ որդի Լեւոնի, որ կենդանի էր և յամի 1320:

23. Ի հարաւոյ արևելից տեղեացս ստուգելեաց՝ նշանակլին զարդիս Կամբազիւղ, ոչ գիտեմ որպիսի և յոյց բնակեալ, և 'ի հիւսիսոյ նորին՝ Մանաս կամ Մանազ[3], գեօղ հին, 40 տամբք. առ որով աւերակք բազում եկեղեցեաց, յորս նշմարի և փայլուն ճարտարութիւն արուեստի. մին՝ հնգեքումբ սեամբք, ձեւով խորանին և նախադրանցն՝ ընծայէ զոհ նախնի եկեղեցեաց. և քառակուսի ջրամբարք փորեալք 'ի ժայռի և մեծամեծ սրբատաշ վիմաք պատեալք, յորոց ցարդ բնակիչք գեղջն հանեն ջուր: Կայ և 'ի հարաւոյ կուսէ գեղջն եկեղեցի մինչև ցյատակ կործանեալ. և առ երի գերեզմանք վիմափորք քուաձև կափարչօք, որք բիւզանդական կամ հռովմէական թուեցան Լանկլուայ[4]: Իսկ ինձ՝ ջրամբարքն և դիրք տեղւոյն ըստ մերձաւորութեան այլոց բերդորէից յիշելոց 'ի պատմչէն Ռուբինեանց, և անունն իսկ՝ ցուցանեն զսա լինել Մանաշ, որոյ տէր էր Հեթում ոմն, ոչ եղբայր Ս. Ներսիսի Լամբրոնացւոյ, այլ նոյին ժամանակակից. բայց 'ի պատմութեան՝ բաց 'ի միոյ ատի նուագէ թագադրութեան Լեւոնի՝ յետ ԺԲ դարու, այլ ոչ գտանեմ զանուն և զյիշատակ տեղւոյս:

Երիւք ժամօք 'ի հիւսիսոյ արևմտից Մանաշոյ կայ Սարը-զավազ գեօղ 'ի ձորադաշտի շրջապատելոց 'ի լերանց, որք զուհաձև մի զմիով վերամբառնան, ձգեալք նովին ուղղութեամբ. որ երիւք ժամուք ևս ընդ Հս. Մ. տարեալ զեզերբ Գօլէ-չայ գետակի օժանդա՛կի գետոյն Տարսոնի՝ հանէ 'ի հովս և յարօտս Նէմնրուտի, այն ինքն է գերահռչակ բերդն ԼԱՄԲՐՈՆ, կամ ուղղագոյն ևս Լամբրօն և Լամբրուն, որպէս գրի յընտիր գրչաց. և երբեմն ևս Լամրօն. թերևս պանծալի քան զբնաւս հայկական շինից Կիլիկիոյ, զոյգ Սոյ, յարևմտից կուսէ համանուն աւանին. որոյ սահմանք առանձինն իմն վիճակ համարին արդ յՕսմանեան վարչութեան, ՆԵՄՐՈՒՆ ՊԷԼԳԷՍԻ կոչմամբ:

Ընթերցաք 'ի սկիզբն ստորագրութեան Պապեռօնի

1 The natural beauty of this spot is beyond all description. Below the rock a river flows, the banks of which are covered with plane and walnut trees, and a carpet of grass. The river, again, is inclosed on both sides by enormous rocks of great hight, full of natural caves, and covered with pine trees, which shoot up at all angles. The brilliant colours of the rocks, red, scarlet, yellow, purple and gray, here distinct, there blended and running into each other, add greatly to the beauty of the scene. — Davis, 45.

2 Եթէ ստուգիւ այսպէս իցէ գրեալ, քանզի է որ այլազգ ընթեռնու զայդ, 'ի բնէ նորոյ:

3 Լանկլուա գրէ *Manaz*, Ֆաւռ և Մանտոյ՝ *Manas*.

4 . . . Des sarcophages creusés dans le roc, avec couvercles prismatiques à oreillettes, indiquent que Manaz est d'origine romaine ou byzantine. — Langlois, p. 358:

թագաւորութեան որդւոյ իւրոյ Հեթմոյ գրեալ, մինչև էին նորա այլ որդիք, կամ թէ կրսերք էին յոյժ տիօք. քանզի ոչ միայն ծանօթ է մեզ որդի նորա Յովհաննէս եպիսկոպոս՝ մկրտութեամն անուամբ Պաղտին, (որ և ինքնին ասէ զօլ համահայր եղբայր արքային Հեթմոյ, իսկ մայր ունել զՊէադրիչէ, մինչ Հեթմոյ և այլոցն մայր կոչիւր Տամա Վիծի՝ դուստր Հեթմոյ՝ եղբօր Ս. Ներս. Լամբրոնեցւոյ), այլ յիշին և այլ ևս որդիք Կոստանդնի, թերևս համամարք Յովհաննու, Սիր Լիկոս, որ յամի 1256 հայր էր երից դստերաց և պատանեկի միոյ՝ Սիր Լէոն անուն. Վասակ, Տէր Ճանճոյ բերդի, որ յամի 1268 պատանդ առաքեցաւ յԵգիպտոս առ՛ի թափել զԼէոն՝ արքայորդի 'ի գերութենէ. դարձեալ և համանուն իւր Կոստանդին տէր Նղրի՝ հաւ Կոստանդնի Բ թագաւորի, կոչի որդի Կոստանդեայ Աւագ Պարոնի: — Այլ մեզ աստանօր չատ լիցի առ խնդիր տեղագրութեանս՝ գիտել զի Փրկչի անապատ կոչէր դժուարամատոյցս այս վայր, և հիմնող նորին՝ արքունի հրամանաւ և ծախիւք՝ Թադէոս վարդապետ, ձեռնասուն Հեթմոյ թագաւորի. բայց ոչ յաջորդք նորա յայտնի են մեզ և ոչ այլ ինչ յիշատակ վանատեղւոյս. այլ աներկբայապէս որիչ է սա 'ի Ս. Փրկչի վանաց կամ եկեղեցւոյն Սկեւռայ՝ 'ի հնագունէ:

Իսկ զահեղախառն գեղեցկութիւն վայրիս՝ 'ի վեր քան զբանի նկարագրութիւն, ասէ ուղէկից Սիպիլեանին. զի « առ ստորոտով ժայռիցն հոսի գետ սրընթաց, յորոյ ափունս հովանանան սօսիք և արքակաղնիք և ծաւալեալ » ծածկեն մարգագետինք. անդրագոյն ևս երկուստեք » գետափանցն՝ ամբառնան բարձրաբերձ քարաժայռք » անհեդեդք, և 'ի նոսին այրք անձեռագործք՝ համակ չըր- » ջապատեալք եղևին ծառովք, որք յամենայն անկեանց » վիմացն 'ի վեր արձակին: Քաջափայլ երանգք ժայ- » ռիցն, կարմիր, բոսորագոյն, դեղին, ծիրանի և գորշ, » ուրեք պայծառ և ուրեք աղօտ և յիրար խառնեալ, » յաւելուն մեծապէս 'ի գեղեցկութիւն տեսարանին »[1]:

Մինչև հեռացեալ 'ի վայրուցս, և մանաւանդ 'ի տեղանց սոցին և 'ի գլխաւորէն՝ 'ի Սմբատայ մեծէ Գունդստապլէ, հաւանելի համարիմ ոչ հեռի և զդաստակերտ նորին զիւրանուն՝ Սմբատակլայ. զորմէ գրէ յամի 1241, 'ի նախայիշեալ իմաստասիրական գիրս՝ զոր ետն ընդօրինակել, և յոր յաւել ինքն յիշատակարան,

« Ի Հայ ազգիս Թուականիս
Վեցհարիւր ինսունըրրորդիս
Գրեցի վատթար ձեռաքըս ես
Անչար? ըզգիր յիշատակիս ».

յորում յիշատակարանի՝ յետ ութից տողիցն՝ զոր կարգեցաք յէջ 71, (և քառանից ևս նախադրելոց), յարէ

« Նոյն և շինող 'ի բնէն որմոյ
Զանաւ դղեակն անմարտելիս,
Որ ըստ իմոյ անուանս եդի
Սմբատակլայ քաջ ամրոցիս »:

Ի սուղ բանիդ, որ և միակ առ 'ի նախնեաց մնացեալ յիշատակ է տեղւոյս, յայտ լինի զի բոլորովին իւր շինած է բերդն, այլ և հանգոյն Պապեռօնի 'ի քարուտ տեղւոջ բարձու, քանզի չասէ հիմնարկեալ՝ այլ 'ի բնէ որմ[2] աճեալ. և երիւք մակադրութեամբք՝ անառ, անմարտելի և քաջ՝ հաւաստէ արդարև յոյժ ամուր և անձեռնհաս զօլ թշնամեաց. սակայն որպէս ասացի, չունիմք 'ի պատմութենէ այլ ինչ ծանօթս. այլ միայն ինքն Սմբատ յիշի և յամի 1265 տէր զօլ տեղւոյս՝ ընդ Պապեռօնի և ընդ այլոց հնգից ամրոցաց. յետ նորա տէր Սմբատակլայի յիշի միայն թոռն իւր համանուն և համակարգ՝ գունդստապլն Սմբատ որդի Լևոնի, որ կենդանի էր և յամի 1320:

25. Ի հարաւոյ արևելից տեղեացս ստուգելեաց՝ Նշանակին զարդիս Կաւրագիւղ, ոչ գիտեմ որպիսի՞ և յոյց բնակեալ, և 'ի հիւսիսոյ նորին՝ Մանաս կամ Մանազ[3], գեօղ հին, 40 տամբք. առ որով աւերակք բազում եկեղեցեաց, յորս նշմարի և վայելուչ ճարտարութիւն արուեստի. մին՝ հնգեքումբ սեամբք, ձևով խորանին և նախադրանցն՝ ընծայէ զօձ նախնի եկեղեցեաց. և քառակուսի ջրամբարք փորեալք 'ի ժայռի և մեծամեծ սրբատաշ վիմաք պատեալք, յորոց ցարդ բնակիչք գեղջն հանեն ջուր: Կայ և 'ի հարաւոյ կուսէ գեղջն եկեղեցի մինչև ցյատակ կործանեալ. և առ երի գերեզմանք վիմափորք քուաձև կափարչօք, որք բիւզանդական կամ հռոմէական թուեցան Լանկլուայ[4]: Իսկ ինձ՝ ջրամբարքն և դիրք տեղւոյն ըստ մերձաւորութեան այլոց բերդորէից յիշելոց 'ի պատմչէն Ռուբինեանց, և անունն իսկ՝ ցուցանեն զսա լինել Մանաշ, որոյ տէր էր Հեթում ոմն, ոչ եղբայր Ս. Ներսիսի Լամբրոնացւոյ, այլ նոցին ժամանակակից. բայց 'ի պատմութեան՝ բաց 'ի միոյ ասափ նուազէ թագաւորութեան Լևոնի՝ յելս ԺԲ դարու, այլ ոչ գտանեմ զանուն և զյիշատակ տեղւոյս:

Երիւք ժամուք 'ի հիւսիսոյ արևմտից Մանաշոյ կայ Սարը-զաւլագ գեօղ 'ի ձորադաշտի շրջապատելոյ 'ի լերանց, որք գուհաձև մի զմիով վերամբառնան, ձգեալք նովին ուղղութեամբ. որ երիւք ժամուք ևս ընդ հս. Մ. տարեալ զեզերբ Գալէ-չայ գետակի օժանդա'կի գետոյն Տարսոնի՝ հանէ 'ի հովս և յարօտս Նէմրունի, այն ինքն է գերահռչակ բերդն ԼԱՄԲՐՈՆ, կամ ուղղագոյն ևս Լամբրօն և Լամբրունն, որպէս գրի յընտիր գրչաց. և երբեմն ևս Լամբռոն. թերևս պանծալի քան զբնաւս հայկական շինից Կիլիկիոյ, զոյգ Սսոյ, յարևմտից կուսէ համանուն աւանին. որոյ սահմանք առանձինն իմն վիճակ համարին արդ յՕսմանեան վարչութեան, ՆԷՄՐՈՒՆ ՊԷԼԳԷՍԻ կոչմամբ:

Ընթերցուք 'ի սկիզբն ստորագրութեան Պապեռօնի

1 The natural beauty of this spot is beyond all description. Below the rock a river flows, the banks of which are covered with plane and walnut trees, and a carpet of grass. The river, again, is inclosed on both sides by enormous rocks of great hight, full of natural caves, and covered with pine trees, which shoot up at all angles. The brilliant colours of the rocks, red, scarlet, yellow, purple and gray, here distinct, there blended and running into each other, add greatly to the beauty of the scene. — DAVIS, 45.

2 Եթէ ստուգիւ այսպէս իցէ գրեալ. քանզի է որ այլազգ ընթեռնու զայդ, 'ի բնէ նորոյ:

3 Լանկլուա գրէ *Manaz*, Ֆաւռ և Մանտռոյ՝ *Manas*.

4 . . . Des sarcophages creusés dans le roc, avec couvercles prismatiques à oreillettes, indiquent que Manaz est d' origine romaine ou byzantine. — LANGLOIS, p. 358:

զգիւտ անձատոյց դղեկիս յԱպլղարիպայ Արծրունւոյ, յետ
կիսոյ ԺԱ դարու, որ սեփականելով ինքեան զառաջինն՝
զաս « եա 'ի մտերիմ և 'ի սիրեցեալ իշխանն՝ որ եկեալ
» էր ընդ իւր յաշխարհէն Հայոց, անուն Օշին ». և էր սա
եկեալ յԱրցախ աշխարհէ Հայոց Մեծաց, յամի 1073, 'ի
Մայրեաց Ջուրք անուանեալ չինավայրէ սահմանաց Գան֊
ձակայ, « ազգատոհմաւ իւրով. և գտեալ զանառիկս ա֊
» մայացեալ՝ չինէր ըստ կարի. և պատրաստեաց նախ 'ի
» ծայր բերդիս հանգստարան սուրբ և գլխաւոր Առաքե֊
» լոյն Նշխարաց. (քանզի նոյն ինքն Ապղարիպ) աւան֊
» դեաց 'ի նա զմասն մեծի և գլխաւորի Առաքելոյն Պե֊
» տրոսի, զոր ունէին Հայք. . . և հրամայեաց հպատա֊
» կութեամբ սպասաւորել յայսմ դղեկի՝ սրբոյ Առաքե֊
» լոյն. և իւր սեփական ունել զբերդս և զգաւառս »: —
Գուշակի 'ի բանիցս զի 'ի վաղ ժամանակաց ընտրեալ էր
տեղիս այս ամուր, և կառուցեալ 'ի նմին բերդն ան֊
առիկ՝ 'ի Յունաց, որպէս ցուցանէ և անունն. որ ըստ Մով֊
սէսի վարդապետի աշակերտի Գէորգայ Սկեւռացւոյ, « 'ի
» յունական բարբառոյն՝ 'ի հայ լեզու՝ կրակարան լսի ».
ոչ գիտեմ զուցէ՞ յայս նշանակ որիշ բառ 'ի յունին, եթէ
λάμπρος միայն՝ որ նշանակէ պայծառ: Բայց 'ի պատմու֊
թիւնս Բիւզանդացւոց՝ ոչ գտի բնաւ զանուն և զյիշա֊
տակ Լամբրունի, իսկ առ պատմիչս Լատինաց միջին դա֊
րուց գրի Lambro: Թուի ինձ ամայացեալ և լքեալ 'ի ժա֊
մանակի հակառակութեան պատերազմաց Յունաց և Ա֊
րաբացւոց, և կրկին կանգնեալ և առ փոքր փոքր յար֊
դարեալ և պատսպարեալ, և գրեաթէ առաջին լեալ ա֊
մրութեամբ և պերճութեամբ 'ի միջի յոգնաթիւ բերդո֊



16. Մանաշ. Եկեղեցի աւերակ.

րայից աշխարհին. առաջին և ազնուութեամբ տոհմի պա֊
յազատացն՝ յաւուրս Ռուբինեանց, յորոց նուաճեալ, ա֊
պա խնամացեալ, 'ի սպառել արուաց այնր տոհմի՝ յինքն
տարաւ զթագն արքայական՝ փեսայանալով Հեթմոյ Ա. 'ի
Զապել դուստր և պայազատ Լեւոնի Ա. որով 'ի դէպ է
կրկնակի ՀԵԹՄԵԱՆ անուանել զտոհմ տերանց Լամբրու֊
նի, որպէս կոչէրն անդստին յանուն Հեթմոյ՝ որդւոյ և
յաջորդի նախայիշեալդ Օշնի՝ եկելոյ յԱրցախական կող֊
մանցն. մեծի հաւանութեան է թէ և նորին իսկ հայրն
Հեթում կոչէր յաշխարհի անդ Հայոց. ապա թէ ոչ հարկ
էր աստանօր Օշնեանք կոչել տոհմին և ոչ Հեթմեանք [1]:
— Զպայազատութիւն կամ զկարգ ծննդոց տոհմին ցինն
ազգ՝ մինչև յերիս դարս՝ ցուցցէ ազգագրական պատ֊
կերն, հանդերձ պատուաստօքն, այսինքն խնամութեամբք
ընդ տոհմս Պահլաւունեաց, Ռուբինեանց և Լիւզինեանց:
Օշին՝ նահապետն և առաջին տէր Լամբրունի, « զոր

1 Հեղինակք կամ աղբերք ազգաբանութեանն Հեթմեանց՝ առ֊
մեղ են, երկար Յիշատակարան մեկնութեան Սաղմոսաց Ս. Լամ֊
բրոնեցւոյն՝ 'ի Սամուէլէ վարդապետէ, և այլ նման յիշատակա֊
րան ձաշոց գրոց՝ գրեալ յաւուրս Լեւոնի Բ. ժամանակագրութիւն

» չինէր քան կարի (խրում), ամրացեալ յանմատչելի ա-
» մուրս՝ անփորձ, և մտերմացեալ Յունաց արքային,
» առնոյր 'ի նմանէ անուն պատուոյ (Սեւաստոս), և տուրս
» գանձուց առատապէս »։ Ոչ գիտեմ ստուգիւ որպիսի՞
ինչ էր յայնժամ Լամբրուն. բայց 'ի յիշատակելն զայն՝
պատմիչք մեր հանապազ յարեն 'ի նոյն՝ առաւել քան 'ի
բերդն Պապեռոն՝ զմակդիրս անմատոյց, անմատչելի,
անառ կամ անառիկ ամրոց, կամ զղեակ կամ բերդ, և
սաստկագոյն ևս՝ բերդ յոյժ անառիկ. քանզի 'ի բնէ իսկ
դրիցն ունէր զամրութիւն, որպէս առէ ոմն 'ի մերոց յի-
շատակողաց. «Անառիկ զղեակն՝ 'ի Թիկունս Տորոս լե-
» րինն, վերադիտակ մայրաքաղաքին Տարսոնի ». և այլ
ոմն, «բերդն Լամբրոնի, որ է առ ստորոտով Տորոսի. 'ի
» գաւառ մայրաքաղաքին Տարսոնի ». և քան զյոլով բնիկ
հայրապետականի (Գէորգեայ), որ էր « յանմատչելի ամրո-
» ցէն Լամբրոն կոչեցելոյ, որ է 'ի ստորոտ մեծի լերինն
» Տաւրոսի »։ Պերճագոյն ևս այլ ոք՝ յիշելով զՕշինն
կամ զՕշինի յնամն, « որ հաւր իւր (յորմէ)ևեթ ժառանգ-
» եալ ամրոցին Լամբրոնի, այն որ երևելի ձրիութեամբ
» նստի 'ի գլուխն Տարսոնի, յառաջնում զանառանցի ա-
» հաւոր լերինն Տաւրոսի »։

Խնդրելի է լսողաց այդ Օշինն՝ յելից կուռէ Լամբրու-
նի, քան նախնեացս բանից. իսկ յարևմտից հիւսիսոյ կայ
բարձրաբերձ լեառնն՝ որ 'ի Թուրք բարբառ 'ի մերս



17. Լամբրունի բերդ.

թարգմանի Եղջին-դաւակ, կամ Եղջին անցք, բայց ոչ
կարի մերձ. որպէս զի մասն այն երրորդի զաշնանցին՝
յորում բերդն Լամբրունի՝ ստորատարի է չափաւոր ընդ-
արձակութեամբ, իբր 1250 Զ. բարձր յերևաց ծովու,
գեղեցիկ մարգագետնօք, միանգամայն արտաւորյօք ալ-
տարածութիւն հովտօք բնակչաց Տարսոնի և Ադանայ, յո-
րոց հեռի կայ 12-16 ժամուց ճանապարհաւ, և զուար-
ճալի արտօրայոց ծառօք. յոր ասեն վաղ ուրեմն Թուրքք
կոչէին զՀայսն որ ընդ մէջ բերդին և Եղջին անցից՝ Կեռ-
վառ Փաշչեան, (Քրիստոնէից արարեալ). յորոց միջին զը-

Սաղաջեայ Դայրի, այլ և այլ յիշատակութիւնք պատմչաց կամ
գրչագրաց. և հակիրճ մահագրութիւնք յազգաւնական Յայսմա-
ւուրս Օշին Թագաւորի, զոր և ունիմք 'ի ձեռին։ Նոյց Եախագրյն
զոտանի ազգաբանութիւն և ազգակցութիւն Ռուբինեանց և Հեթ-
մեանց ունեցեալ 'ի փառնի լեզու՝ յանծանօթ հեղինակէ. յետ ԺԳ
դարու կամ 'ի սկիզբն ԺԴին, 'ի հայերէն յայնմ մատենիցն՝ որ կոչի
Lignages d' Outremer. յորում մի քան միոյն հարցն նա զառհան և
զսերունդս փառնեաց եղելոց յայս կոյս ծովու (յարեւելս), և սերա-
ծեալ այլ և այլ եղանակք, բազմաց և բերդից Ամուրի և 'ի Պա-
ղեստինի. և զատ յայլ և այլ ղեկից՝ յորս խառն մէջէ և զհերոս-
նեայցս ընդ նախն ազգաբանութիւն, զլուխ մի եւ (Դ) առանձին
հարցէ զՀայոցս. սկսեալ 'ի թագաւորէն Թորոսէ Բ. մինչև զմա-
նուկն Լեւոն Գ։ Ի սկզբանն սկսեալ, փոխանակ Սմբատայ զՄլեհ
ասելով հայր Ռուբինի Բ և Լեւոնի Թագաւորի, այլ հետևողքն
ուղիղ են։ Ստանանա այս Ազգաբանութեանց Թարգմանեալ է՝ ոչ
հեռի ժամանակաւ 'ի հեղինակէն՝ և 'ի հայ լեզու, որպէս և յայտք

բանից՝ շատ իսկ վիրջեալ է, այսպէս և յաճախ ըստ պա-տերազմական պաշարմանց և զինակալութեանց, և ոչ երբէք յիշի 'ի պարտութիւն մատնեալ և նուաճեալ յարձակմամբ, բայց եթէ 'ի հնաւ ուրեմն նուագի, որոյ երբն և որպէսն իսկ անյայտ, կամ թէ ընդ այտ ինչ մեծատակաւ, որպէս տեսցի յետոյ 'ի կարգին։

« Յետ վախճանի (Օշնի նորոց շինողի Լամբրոնի), որ-
» դւոց որդի իւր ՀԵԹՈՒՄ՝ հայրենի աթոռոյս, և պատուե-
» ցաւ 'ի Յունաց արքայէն Ալեքսէ՝ սեբաստոս անուամբ։
» Յորժամ եկն Փռանկն և էառ զսուրբ քաղաքն Երու-
» սաղէմ, 'ի ՇԽԷ (1098) թուականին, և յետ ժամանա-
» կաց անձուկ բազում նեղութեամբ կրեաց 'ի նոցանէ
» տեղատատան ՀԵԹՈՒՄ՝ վասն հայրենի բերդին. և զեր-
» ծեալ յամենայնէ օգնութեամբն Աստուծոյ և սուրբ
» Առաքելոյն Պետրոսի, փարթամացաւ և մեծացաւ օգ-
» նութեամբ Թագաւորին Յունաց Յոհաննու »։ այն է Յովհ. Կոմնենոս որդի Ալեքսի, որ կալաւ զկայսերական գահն՝ յամս 1118–1143. յորում ժամանակի, և անդըստին յառաջին մտից Խաչակրաց յայս կողմանս, գլխաւորք նոցին իշխանք եկեալք զերերս առնէին իսկ 'ի Յունաց և 'ի մեծանց իսկ՝ զամրոցս և զքաղաքս աշխարհին. Բայց նոքին որինակի առ փոքր փոքր և Ռուբինեան պայազատք՝ 'ի հիւսիսոյ իշխանեալ 'ի հարաւ. որոց երկոցուն եւ, համազգեացն Հայոց և ասորոց սրբամեայց, զգէմ



18. Հովիտք Լամբրոնի.

ունէին ՀԵԹՈՒՄեանք և այլք ամենք նախնեաց իշխանք բերդատեարք, շուրջ անտարկ ամրոցաց իւրեանց Լամբրոնի, Պապեռոնի, Աղեստայ, և այլոց. որք եթէ չէին այնպիսիք 'ի բնէ և յարուեստ, կամ եթէ առաւել զարգացեալ էր արուեստ բերդամարտութեան, վաղ արեան մատնեալք լինէին 'ի ձեռս Փռանկացն այնոցիկ, և ոչ յաջողէր թերևս Լեւոնեանց նուաճել զբովանդակն Կիլիկիա։ Զայս նշանակէ բան յիշատակագրին՝ զՀեթմեց նեղելոյն 'ի նոցանէ. և յաւել վարելով զպատմութիւնն՝ ասէ զնմանէ. « Զի ունէր որդիս վայելուչս և զաւակս,
» որք կատարեցան հասակաւ առաջի իւր. անմանացոյց
» զամենս 'ի նոցանէ. և զաւագ որդին՝ որոյ անուն էր
» Օշին՝ եթող ընդ իւր միայն առանց ամուսնութեան. իսկ
» Սմբատայ՝ որ յետ նորա՝ եա զՊապեռոնն. և միոյ 'ի
» զաւակացն՝ փեսայացեալ զեղբայր կաթողիկոսին Հայոց
» Գրիգորի՝ զՎասակ, որք էին թոռունք Գրիգորի Մա-
» գիստրոսի Բջնեցւոյ։ Իսկ յետ վախճանին ՀԵԹՄոյ՝ պա-
» յազատեաց զհայրենի աթոռն՝ հարազատ որդին նորա
» Օշին, և պատուեցաւ յարքայէն Մանուէլէ սեբաստոս
» անուամբ, և փառաւորեցաւ բազում զանձիւք »։ Յորմէ յայտ լինի՝ զի երկարակեաց լեալ ՀԵԹՄոյ վախճանեալ է յետ 1143 ամի. զայս տան զուշակել և ծնունդք Օշնի. զի յետ մահուան հօր նորա՝ « ամս հարմանցոյց իւ-
» րայն իւր վՎասակ՝ զզուսար եղբար իւրոյ Զարմաւոր ա-

» նուն' (զՇահանդուխտ). յորոց ծնաւ' յետ անդրանիկ
» դստերն (Մարեմայ) որդի' Հեթում անուանեալ, 'ի Ո
» թուականին (1151), և երկրորդ' հայրս մեր », այսինքն
Ս. ՆԵՐՍԷՍ յամի 1153. յետ սոցա երեք ուստերք, Ռուփ-
ղատ, Շահնշահ, Գրիգոր, և երկու ևս դստերք, Ցաղիրա
և Շուշան։ — Հաւատարիմ սպասարկութիւն Օշնի' որ-
պէս և նախնեացն' 'ի դրան կայսեր, առթէր նմա զփառ-
թամութիւնդ և զմեծութիւն, այլ ընդ նմին և զթշնա-
մութիւն Ռուբինեանց. յորոց' առ սովաւ պայազատէր
կորովին Թորոս Բ, զերծեալ 'ի բանտէ կապանաց Կ.Պոլ-
սի, և նուաճեալ մի ըստ միոջէ նախ զհայրենի բերդեանն
լեռնական, ապա ձգեալ զձեռս իւր և 'ի վերայ քաղա-
քաց Դաշտային Կիլիկիոյ, զորս մերթ ունէր և մերթ
թողոյր' ըստ ամբառնալ և զիջանել նժարից բաղդի. հար-
կաւորեալ լինէր և Օշին նիզակակից լինել Յունաց, որ-
պէս և մերձաւորք իւր Նաթանայէլեանք և այլք. որք և
12,000 հեծելովք Անդրոնիկոսի' երթեալք 'ի պաշարումն
Մսսայ' 'ի պարտութիւն մատնեցան 'ի Թորոսէ. Սմպատ
եղբայր Օշնի' տէրն Պապեռոնի' անկաւ 'ի մարտին, իսկ
Օշին ընդ այլոց գերի վարեցաւ. և գին հատեալ փրկա-
նաց անձին 40,000 ոսկի' զերծաւ. տուեալ առժամայն
զկէս գումարին, և վասն կիսոյն պատանդ' զերեխայ որ-
դեակն Հեթում զտարեկան կամ զերկեմեան, որ և մկըր-
տեալ իսկ չէր, և կնքեցաւ 'ի Թորոսէ, և սնեալ առ նմա
սիրեցաւ վասն կայտառ կերպարանացն և զգօնութեանն.
մինչև հաճել նմա և զմնացեալ պահանջ 20,000 ոսկւոյ
համարել 'ի պռոյգ դստերն իւրոյ' զոր տայր 'ի հարսնու-
թիւն տղայոյն, և առաքէր զնա առ հայր իւր։ Սակայն'
ոչ գիտեմ յինչ պատճառս, (այլ հաւանօրէն սադրանօք
Մանուէլի կայսեր' որ շարժէր զամենայն շրջակայ երկրա-
կալս ընդդէմ Թորոսի), ստիպեցաւ և Օշին դարձեալ
հակառակել սմա. և ոչ լոկ անձամբ, զի ոչ իսկ կարէր
սակաւ արամբք վիճակին իւրոյ դիմամարտել ընդ այն-
քանեաց զօռ ոսոխի. այլ « և երբեմն (ըստ Պատմչին, որ
» ոչ նշանակէ զամենայն), առաջնորդ եղեալ Թուրքին' և
» եբեր 'ի վերայ Ատանայ, էառ զնա և բազում կոտո-
» րածս արար 'ի նա. որ և ասէին թէ հինգ հարիւր կոյս
» աղջիկ տարան, թող զայլ անթիւսն ». վասն որոյ և
արտմեալ Թորոսի գայր (յամի 1165) աւերել զսահ-
մանս Լամբրունի. և « ոչ սակաւ խռովութիւնք լինէին
» և հեղմունք արեան 'ի մէջ երկուց իշխանացն, մինչև
» հարկ լինել սրբազան կաթողիկոսին Տեառն Գրիգո-
» րիսի' շարժել զբանաւոր և զիմաստուն եղբայրն իւր
» զարքեպիսկոպոս' զՏէր Ներսէս (Շնորհալի), առաքել
» 'ի մէջ սոցա, որպէս զի խոհականութեամբն իւրով
» հնարեսցի համոզել զնոսա 'ի խաղաղութիւն. որ և աշ-
» խատասիրաբար ճանապարհորդեալ գայր առ նոսա, և
» զհաւատացեալ գործն արդեամբք կատարէր, 'ի ձեռն
» իւրոյ միջնորդութեանն' անքակ սիրով կապակցելով
» զնոսա ընդ միմեանս »։ Զայսոսիկ պատմագրէ նորին
իսկ Օշնի որդի դրուատելին Ս. Ներսէս, հայրենական
զթոռն ջեռեալ' մեղադրելով զԹորոս' իբրև երդմնազանց
դաշինն հնազանդութեան կայսեր (1159), իսկ զՕշին'
« հաւատարմապէս մնացեալ 'ի հնազանդութիւն արքա-
» յին Հռոմոց »։ Յետ վերահասութեանն, « առեալ
» գերագոյն իշխանն (Օշին) զսրբասնեալ արքեպիսկո-
» պոսն, 'ի ճանապարհ անկեալ' բերէր յիւրն սեպհական
» աւանն, ըստ արժանի պատուելով մեծարեալ 'ի մէջ
» հարազատ ընտանեացն և կարևոր բարեկամացն. և
» օրհնեալ զնոսա և զգղեակն և զամենայն բնակիչս գա-
» ւառին ». զի փեսայ իսկ էր նորա Օշին, և որդիք սորա
'ի թոռանց համարի. վասն որոյ և ասէ համանուն և հա-
մահօրի թոռնեակն իւր (Ն. Լամբրոնեցի) զսրբազան
հաւ-եղբօրէն, եթէ « 'ի սէր հարազատ ընտանեացն դի-
» մէր. քանզի դուստր եղբօր սորա էր օրինաւոր ամու-
» սին Օշնի »։ Ոչ ինչ երկբայիմ և « ըստ արժանի պա-
տուել » Օշնի զՇնորհալին, և ընդ մեծահանդէս խրա-
խուճս Լամբրունի, 'ի սակաւ աւուրս բնակութեան նորին
անդ, որ և անշուշտ մի 'ի գերագոյն յիշատակաց և փա-
ռաց է վայրենագեղ վայրացս ամայացելոց. այլ ցանկայի
թէ յերկարագոյն նուազօք նկարագրէր մեզ որ յայնժամ
երկոտասանամեայ կամ երեքտասանամեայ պատանեակն
էր' Սիրելին Սմբատ-Ներսէս' զհրճուանս և զզգուանս
յաստուածընկալ բազուկս ալէծաղիկ Շնորհալւոյն։
Յետ այլ ևս ոչ գիտեմ որքան ամաց, այլ յառաջ քան
զ'1175, Օշին' « լի աւուրբք 'ի ծերութեան հասակին' յա-
» թոռ իւր և 'ի մէջ եղբարց և զաւակաց, օրհնութեամբ
» փոխեցաւ առ Քրիստոս. և եցոյց անդրանիկ որդւոյն'
« Հեթմոյ' զտէրութիւն հայրենի աթոռոյն »։ — Ցանկալի
և չքնա՛ղ ընտանիք, ամենայն բարեմասնութեամբք ուռ-
ճացեալ, ծնողքն և ծնեցեալքն ութեքին. արժանաւոր
խոհականին և մեծոգւոյն Օշնի' և Շահանդուխտ « լինել
» սմա կին ժրագլուխ և պսակ առն իւրոյ, իբրև զայգի
» վայելուչ' զնորատունկս զաւակաց ծաղկեցուցանէր
» շուրջ զհայրենի սեղանովն. և միայն յօրհնութիւն Աս-
» տուծոյ »։ Հարկ է խոստովանել' զի ազնուաշուք կըր-
թութեանց հրահանգօք դերազանցէին Լամբրոնեանքս
քան զՌուբինեանս, մանաւանդ յայսմ ժամանակի. ընդ
մեծութեան, քաջութեան և բարեպաշտութեան' ունելով
նոցա և շնորհս իմաստութեան և իմաստասիրութեան,
յորս մեծաւ խնամով մարզէին մանկունքն 'ի ծնողացն.
որպէս և ասէ իսկ յիշատակագիր վարուց Ներսիսի. «Մա-
» նաւանդ 'ի քաջահաւատ մօրէն իւրմէ (Շահանդխտոյ)
» դաստիարակեալ (էր) յամենայն երկիւղ ». որ և « բե-
» րաւ 'ի հաւատարիմ ծնողացն' և ընծայեցաւ ամենօրհ-
» նեալ և միշտ փառաւորեալ Աստուածածնին' 'ի տա-
» ճար անուան իւրոյ' որ 'ի վանքս Սկևռայ, առընթեր
» բերդին »։ Հաղորդ հանճարոյ և ուսմանց սրբոյ եղբօրն'
գտաւ և պայազատն անդրանիկ' ՀԵԹՈՒՄ. զոր և Պատ-
միչն կոչէ « այր զգօն և մեծիմաստ, և գրագէտ յոյժ ».
որոյ և գրաւոր ինչ վաստակ եհաս մինչև առ մեզ։ Իսկ
զհօր նոցա Օշնի ուսումնասիրութեան ունիմք 'ի ձեռս մեր
յիշատակ մի, հնագիր վարք Սրբոյ Ոսկեբերանի, թարգ-
մանեալն 'ի Մեծէ Վկայասիրէն. ընդ որում' մաղթէ
գրիչն, « արժանի եղիցի բարւոք յիշատակի' մեծապատիւ
» սեւաստոսն և քրիստոսասէր Պատրոնս Աւշին, հանդերձ
» սրբասէր և ազնազգեաց զուգակցաւն իւրով, և աս-
» տուածապահ պատանեկօքն և բարեզարմ հարազա-
» տօքն ». Նոյն և այլուր գրելով (ըստ պատճենին որ յէջ
82), վասն ազնուութեան տոհմին կամ ինքնիշխանու-

բար տէրութեանն, պատշաճեցուցանէ նմա և զարքայաչուք կոչումն: — Ի համանման իմն և չքնաղագոյն գրչութեան [1], «Գերագոյն իշխանաց իշխան», կոչի և Հեթում, որ կալաւ զաթոռ իշխանութեանն ցաւաջին ամս ԺԳ դարու, բազում և պէսպէս դիպուածովք. և նախ, յետ մահուան աներոյ իւրոյ մեծին Թորոսի, Թուի թէ և յետ մահուան հօր իւրոյ Օշնի, զի յանկատար հասակին հարկաւորեալ էր յոչ կամս առնուլ զդուստր նորա 'ի կնութիւն, «և 'ի կենդանութեանն Թորոսի ոչ ինչ իշխէր » առնել նմա..., առաքեալ 'ի բաց եհան յիւրմէ: Յաղագս որոյ զայրացեալ Մլեհն (եղբայր և յաջորդ Թորոսի) գնաց պաշարեաց զԼամբրունն, և բազում նեղութիւնս հասոյց 'ի բնակիչս նորա. քանզի 'ի վաղուց » հետէ Ռուբինանք և Հեթմնք մախային ընդ միմեանս. « և այս եղև կրկին պատճառ խռովութեան նոցա. վասն » որոյ և սատկապէս նեղէր զնոսա պատերազմաւ և առ» վով [2]»: Ըստ նմին օրինակի և յաջորդն Մլեհի՝ Ռուբէն Բ (1177) «սկսաւ նեղել զԼամբրունն պատերազմաւ » և տարւոյ՝ զամս երեք, և յոյժ տառապեցոյց զնոսա, » վասն հին մախանացն՝ զոր նախկի ունէին ընդ միմեա» նըս. այլ ոչ կարաց առնուլ»: Քանզի Լամբրունացիք հրապուրեցին զԲրինձն Անտիոքայ, որպէս միպասանէ վաճրամ, դաւաճանել զՌուբէն, որ և կալաւ զնա խաբանօք. այլ

«Նորին եղբայրըն քաջացեալ,
Լևոն, և զօրքն արիացեալ՝
Զիշխանութիւնըն պինդ կալեալ
Եւ ըզԼամբրօն յոյժ սըղարեալ»:

Ի վերջին ամս իշխանապետութեանն Ռուբենի և յառաջ քան զթագաւորութիւն եղբօր նորա Լևոնի՝ զամս իբրև



քսան Թուի 'ի խաղաղութեան վայելեալ Լամբրունացւոց և ակնածութեամբ մեծարեալ զանդիմակացն Լևոն, յորոյ և 'ի հանդէս Թագադրութեան՝ եկն Հեթում եղբարբք իւրովք և տերամբք ամրոցին Պապեռօնի: Զիմաստուն վարչութիւն Հեթմոյ յայն միջոց ժամանակի՝ աւանդէ յիշատակագիր չքնաղ և ամենազարդ Աւետարանին գրելոյ յամի 1193, հրամանաւ և ծախուք նորին և Սրբոյ հարազատին իւրոյ, սկսանելով ըստ ձևոյ օրինակի որ երևի 'ի հանդէպդ (յէջ 83), ըստ այսց բանից. «Գրեցաւ » տիեզերակեցոյց փրկական սուրբ աւետարանս, յամս » Թու. ՈԽԲ, 'ի հայրապետութեան Հայոց Տեառն Գրի» գորի, յեպիսկոպոսութեան Կիլիկեցւոց նահանգիս » Տեառն իմոյ Ներսիսի, որ սուացաւ 'ի պատիւ և 'ի փառս » սուրբ եկեղեցւոյս Ամենափրկչիս զայս աստուածաբան » մատեանս, 'ի վանքս Սկևռայ, առընթեր անմատոյց » բերդիս Լամբրունի, որոյ տիրէ բարեպաշտ Սեբաստաւս Հեթում՝ հարազատ եղբայր սորա...: Քանզի » երկոքեան սոքա 'ի մրցման աշխարհաց և գաւառաց՝ » որք յայս աւուրքս, հօգևոր և մարմնաւոր անդորրութեամբ անվրդով պահեն զսոսա՝ որոց իշխենս »....: — Այլ յետ մահուան սրբոյ եպիսկոպոսին՝ 'ի պերճանալ Լևոնի Թագաւորական իշխանութեամբն, առ անկաս-

[1] Ի ստորև յիշեալ Աւետարանն, գրեալ վասն եկեղեցւոյ Ս. Փրկչին Սկևռայ վանաց, և աշնուաբար ընծայեալ վանացս Ս. Ղազարու՝ 'ի Նիկողայոսէ Հովւեանց կոստանդնուպօլսեցւոյ:

[2] Յիշատակագիր համառօտ Պատմութեանն Ռուբինեանց:

կած ևս լինել, կամ սաղրեալ 'ի պատճառէ խմբէ՝ զոր
ապստամբութիւն համարի Կիրակոս Պատմիչ, «խորհէր
» Լևոն իմաստութեամբ փեսայել զԹէս Նոցա (Լամբրու-
» Նացեաց), և ցածուցանել զբարձրայօն հպարտութիւն
» Նոցա։ Խօսէր ընդ Հեթումա... բանս ախորժականս
» մտաց Նորա. Կամք են իմ առնել ընդ քեզ կապակցու-
» թիւն սիրոյ, և տալ զդուստր եղբօր իմոյ Ռուբենի ըզ-
» Զապէլն 'ի կնութիւն որդւոյ քո երիցագունի՝ Օշնի. և
» Հեթում շնորհակալութեամբ ընկալաւ զբանն և ուրա-
» խացաւ։ Եւ ապա 'ի քաղաքն Տարսոն պատրաստեցին
» զպէտս հարսանեացն (1201). և Հեթում եկն տամբք
» և զաւակօք և ամենայն աղխիւք 'ի Տարսոն։ Եւ Թա-
» գաւորն Լևոն կալաւ զնոսա. և առաքեալ էառ զԼամ-
» բրունն՝ առանց մարտի. և զՀեթում՝ եդ ժամանակս

» ինչ 'ի բանտ. և ապա հանեալ 'ի բանտէն՝ ետ Նմա
» գեղորայս բազումս, և պատուով ընդունէր զնա. և Նա
» ծառայէր Նմա միամտութեամբ, ըստ իմաստութեան
» իւրոյ[1]»։ Այլ յոր 'ի կասկածի գոլով Լևոնի՝ դարձեալ
«յետ ամաց ինչ կալեալ զնա եդ 'ի բանտի». յայնմ-
հետէ տաղտկացեալ Հեթմոյ և զզուեալ յաշխարհական
շքոյ, որ յոր 'ի սաղապման և 'ի վրդովի կացուցանէր
զխաղաղասէր բարս իւր, կամովի հրաժարեաց յամե-
նայնէ. և անդէն 'ի Նմին բանտի «զգեցաւ զգեստ կրօ-
» Նաւորութեան»։ Զոր լուեալ քեռւոյ Նորին՝ Գրիգորի
Ապիրատի կաթողիկոսի՝ եկն 'ի Հռոմկլայէ առ Թագա-
ւորն, յաղերս հաշտութեան. «և գնաց Թագաւորն առ
» Նա 'ի բանտն, 'ի Վահկայն. և խնդրեցին Թողութիւն
» յիրերաց. և ազատեաց զնա Թագաւորն, և ետ Նմա

» զսուրբ ուխտն Դրազարկն. և անդ եկաց մինչև ցօր
» մահուան իւրոյ. և 'ի ժամ կրօնաւորութեանն փոխե-
» ցաւ անուն Նորա, և անուանեցաւ Հեթի»[2]։ Մահ Նորա
հանդիպեալ է 'ի միջոցի 1212–1218 ամաց.– քանզի յա-
մի 1210 գնաց դեսպանութեամբ 'ի Լևոնէ առ Իննովկ. Գ.
պապ և առ Օթոն կայսր, խնդրել Թագ վասն Ռուբինի
Թոռին Լևոնի, զոր խորհէր Նա յայնժամ ժառանգ զա-
հուն իւրոյ կացուցանել. և մինչ Նաւագնաց լինելով քե-
րէր զափամբք Իտալիոյ, Թարգմանէր 'ի վերայ ծովուն 'ի
լատին լեզուէ զՇարադրութիւն այսինքն զյաջորդութիւն

ինքնակալացն և զհայրապետաց Հռովմայ. և եկաց, որ-
պէս և ինքնին գրէ, «առ ոտս Նորա (կայսեր) ամ մի և
» ամիս երեք. (որ և) դարձոյց զմեզ հարկօք առ Թագա-
» ւոր մեր (Լևոն), արձակելով ընդ մեզ և Թագ արքայա-
» կան բազմածախ և բազմագին՝ յականց պատուակա-
» Նաց և 'ի մեծագին մարգարտից ընդելուզեալ. զոր բե-
» րեալ մեր՝ մեծաւ ուրախութեամբ ընկալաւ Թագաւորն
» մեր, և պսակեաց ընդիր պսակաւն գեղեցիկ զԹոռէն՝
» որդի դստեր եղբօրն իւրոյ և որդին Բրնձին Անտիո-
» քայ Ռէմնդին. 'ի Թու. Հայոց ՈԿ (1211), 'ի տօն Սուրբ

[1] Այս ըստ պատմութեան Կիրակոսի, ԼԵ։

[2] Եւ զայս ծանուցանէ մեզ Պատմիչն Ռուբինեանց։

» Աստուածածնին, յաւգոստոսի ԺԵին. և թագաւորէ » ընդ իւր Հայոց՝ 'ի կամս Աստուծոյ ». – իսկ 'ի սկիզբն 1219 ամի Լևոն եւ Յովհ. կաթողիկոսի փոխանակ Հռոմկլայի՝ զվանս Դրազարկի. « զի Հեղի վախճանեալ էր » յառաջ », ասէ Պատմիչն: Այսպէս փոխանակէր նա զնախապատիւն ամրոցաց աշխարհին Կիլիկեցւոց՝ ընդ նախապատիւ վանորէից նորուն (Դրազարկ), և զիշխանական մեծավայելուչ փառսն՝ ընդ քրիստոսական հեզութեան. զուգակից և երիցագոյն գոլով Հեթումս այս տէր Լամբրունի՝ յերիս ևս համանուանսն և գոգջիր համապատիւս, որք զնոյն օրինակ կրօնաւորական կատարած կենաց ընտրեցին, այլ և այլ կարգաք և կոչմամբք. չորեքին սոքա Հեթումք երկանուանք, հանճարեղք և իմաստասէրք, զօրաւորք և բարեպաշտօնք, հռչակաւորք և հռչակելիք[1]:

Ի նուաճել Լևոնի զԼամբրուն, « գրեաց նշովս, (եթէ արժան իցէ պարզապէս ընդունել զբանս Կիրակոսի » պատմչի), ոչ ևս այլ տալ զնա իշխանի ումեք, բայց » միայն արքունի լիցի. զի հանապազ, ասէ, տեարք նորա ապստամբ լեալ են վասն ամրութեանն... Եւ նորա » առեալ եդ 'ի նմա՝ զմայրն իւր (Ռիթա) զՏիկնաց տիկին »: Մի 'ի մերձաւորաց պայազատի տեղւոյն՝ Ներսէս քահանայ՝ քեռորդի մեծի Լամբրունացւոյն, ողբալով գրէ. « Ի չորրորդումն ամի (1205) զրկելոյ եղբօր սորա » Հեթմոյ՝ աստուածասէր և բարեպաշտ իշխանի, և մեր » և բովանդակ զարմից մերոց՝ 'ի սեպհական բնակութենէ մերմէ, 'ի դղեկէն Լամբրօնի կոչեցելոյ, և 'ի » միաբանեկեցաց և հրեշտակաբնակ ուխտէ՝ յՍկեւռայ » վերաձայնելոյ ». ապա « 'ի մխիթարութիւն վշտագնեալ » և թշուառական ոգւոյ » իւրոյ՝ ասէ ընդօրինակել յայնմ ամի զչքնաղն 'ի գրաւոր գործս քեռւոյն՝ զՊատարագամեկնիչն: — Ի կրօնաւորութեան հօր իւրեանց Հեթմոյ՝ յայտ է թէ որդիք նորա բաժանեցին զժառանգութիւնն զոր թողեալ էր նոցա Լևոնի. բայց անդրանիկ նորա Օշինն ոչ յիշի 'ի պատմութեան, և թուի վաղավախճան եղեալ. եղբայր նորա Կոստանդին կռուելով երբեմն ընդ զօրս սուլտանին Իկոնիոնի (1217) գերի վարեցաւ, և ազատեցաւ փրկանօք թագաւորին Լևոնի: Յետ մահուան սորա՝ պայլ և խնամակալ թագաւորութեան կացեալ համանուան իւրոյ և քեռւոյն՝ Պապեռօնեանն այն Կոստանդնի (փեսայացելոյն 'ի Տամսլիծի), վասն խնամութեանն և հարկի անձրոյ իւրոյ, միանգամայն և առ անկասկած « թիկունս օգնականութեան իւր առնել զորդին Հեթմոյ զԿոստանդին համանուն իւր . . . (Պայլն » դարձուցեալ) տայ 'ի նա զԼամբրօնն, զանփականն » իւրեանց. և եդ զնա թագադիր որդւոյ իւրոյ (Հեթմոյ Ա): » Իսկ նա յետ աւուրց ինչ՝ ըստ հայրենի սովորութեան » իւրեանց՝ ապստամբեաց 'ի քեռորդւոյ իւրոյ յարքայէ » Հեթմոյ. և թէպէտ շատ ջանաց Կոստանդին հայր արքային, և ինքն իսկ արքայ, ոչ կարաց ածել զնա 'ի հաւանութիւն հնազանդութեան. զի ձեռն եւ նա 'ի սուլտանն Հռոմոց. և այսպէս կայր նա ապստամբ: Իբրև » փախեաւ սուլտանն 'ի Թաթարէն, արքայն զամենայն » գիւղս և զանդաստանս Լամբրօնին՝ արար 'ի ներքոյ » հրամանաց իւրոց. և միայն մնաց նմա բերդն՝ որ ապստամբեալ էր: Ապա յղեաց Կոստանդին դեսպանս առ » արքայն՝ խնդրել զհաշտութիւն և տալ զորդիս իւր արքայի 'ի ծառայութիւն, և ինքն մնալ 'ի բերդին, և արքայն ոչ կամեցաւ. երկիցս և երիցս յղեաց, իսկ արքայն և հայրն ոչ կամեցան: Ապա գնացեալ Կոստանդնի 'ի Կօնն, և առեալ զօրս սուլտանին Հռոմոց, որք » յայնժամ թշնամիք էին արքային, զի եւ զմայր սուլտանին 'ի Թաթարն, զայ յեղակարծում ժամու, մինչդեռ ցրուեալ էին զօրքն արքունի յիւրաքանչիւր տեղիս, և մտեալ յաշխարհն՝ աւերեաց զբազում աւանս » և զագարակս սրմամբ և սպանմամբ և գերութեամբ, » զբազում քրիստոնեայս կոտորեալ. և այսպէս բազում » չարիս անցուցեալ ընդ աշխարհն քինահանութեամբ: » Իսկ արքայն իբրև ետես զայն չարիս՝ ժողովեալ զզօրս » իւր՝ արիութեամբ հասեալ 'ի վերայ բազմութեանն, » սրոյ ճարակ ետ զամենեսեան. և փախեաւ միայն ապստամբ իշխանն և սակաւք ընդ նմա. այսպէս եօթն » անգամ հարաւ 'ի նմանէ, ապա եմուտ յամրոցն իւր և » ոչ իշխէր համարձակիլ յաջ կամ յահեակ »[2]: — Մեծ պատիւ էր թագադիրն լինել արքայի, և այսպէս ստորագրէր Կոստանդին 'ի պաշտօնական թուղթս, յորոց գոյզն մի նշմար մնայ 'ի պարգևագրէն, որով յամի 1233 տուեալ է Հիւրընկալ ասպետաց զաւանն և զբերդ Կովառայ, որ թուի հարուստ միջոցաւ հեռի 'ի սահմանաց Լամբրունի՝ ընդ արևելս, 'ի հովտին Ջահանայ. 'ի փռանկ լեզու գրեալ էր բանն, « Constantin seigneur de Lam» bruns et sers de Deus, et *meteor de la Couronne des Er» mines* »[3]: — Ի ժամանակի բռնակալութեան սուլտանին, մինչ չև էր հաստատեալ թագաւորութեանն Հեթմոյ, և տայր իբրև հարկ երեք հարիւր նիզակաւորս, նոյնպէս և տէրն Լամբրօնի տայր սուլտանին՝ քսանևհինգ նիզակաւորս, երբ և խնդրէր նա: Մարթի 'ի համեմատութենէ թուոցս, տասնապատիկ աւելի մեծ և ընդարձակ համարել զերկիր և զզօրութիւն թագաւորին Հայոց քան զկալուածս Լամբրունացւոյն, եթէ արժան իցէ ըստոյգ համարել զբաղդատութիւնս: Սորին Կոստանդեայ առաջնորդութեամբ իջին հրոսք սուլտանին յամի 1245 « ընդ Պապառօնին լեառն 'ի վայր », և յայրեաց յաւեր դարձուցեալ զսահմանսն՝ եկին պաշարել զՏարսոն. այլ

1 Հեթում — Հեղի, Լամբրունացիս այս.
Հեթում Ա թագաւոր — Մակար † 1270.
Հեթում Բ — Յովհաննէս, փրանկիսկեան † 1308.
Հեթում Տէր Կոռիկոսի — Անտոն, Պրեմոնստրատեան:

2 Կիր. գլ. ԼԶ: — Ժամանակագիրն յաջորդ Սմ. Անեցւոյ համառօտիւ ասէ զիրացս. « Ապստամբեաց Լամբրոնեցի Կոստանդին » 'ի թագաւորէն Հեթմոյ, և ել առ Խիաթատին սուլտանն, և առեալ զօր՝ գայ 'ի Կիլիկէ, և յաղթեալ լինի »:

3 Cartulaire, 140.

4 Աւանդեն Վինցենտ. Բելլովակ. և Ս. Անտոնին եպիսկոպոս Փլորենտիոյ, առ Կոստանդինս այս տէր Լամբրունի առաքեալ մահրամի նորա Սուլտանին, եթէ կամէր անձամբ երթալ առ Քահանայապետն Հռովմայ և յանձնել նմա զամենայն երկիր իշխանութեան իւրոյ, բերդ մի միայն պահելով ինքեան. այլ զանգիտէր, զի մի վտանգ ինչ հասանիցէ բարեկամին իւրոյ. իսկ տէրն Լամբրունի խորհուրդ տայր նմա, մի անձամբ երթալ, այլ առաքել դեսպան առ Քահանայապետն. սակայն չել 'ի գլուխ այնպիսի գործ: — VINCENT. BELLOVAC. Specul. xxx, 145.

հալածեցան 'ի Հեթմոյ արքայէ և յեղբօրէ նորա Սմբատայ. Նոյնպէս և յերկրորդում ամին: Թերևս այս և ապստամբք են 'ի թիւ եօթանցն արշաւանաց Կոստանդնի' յիշեցելոց 'ի Կիրակոսէ: Չեն յայտ պատճառք այսքան ոխութեան դորա ընդ սրբանառու ազգակցաց իւրոց. բայց զի թերևս ինքն թեկն ածէր արքայութեան Հայոց. զի ոչ ևս է կարծել' թէ ըստ հարցն օրինի հաւատարմութիւն ունէր առ կայսրն Բիւզանդիոյ, որոյ վաղուրեմն յուսակտուր լեալ էր 'ի տիրութենէ երկրին Կիլիկիոյ. թէ և գուցէ աւելի քան յայլ կողմանս միջնաշխարհին' 'ի սահմանս Լամբրունի գոյին Յոյնք և կիսայոյնք ըստ ծիսի.— յորոց սակի իցէ արդեօք Յուշապ ոմն ստրատեղատ, որ յամի 1233' « հոգւոյ չարի օժանդակ եղև » պանդխտացելոյ ումեմն կրօնաւորի ընդօրինակողի աւետարան մի, « յանմատոյց դղեակս Լամբրուն, 'ի փոքրիկ » ագարակիս' որ Յովանի կոչի », վասն Կարապետի աստուածարեալ քահանայի և եղբօրորդւոյ նորա « որբանոյ » սնունդ պատանւոյն Ստոմայ », գերծելոց 'ի Միջագետաց' յահէ Թաթարաց: — Իսկ ինքն Կոստանդին յետ այնքան հարուածոց զոր ետ և ընկալաւ, ելեալ 'ի սպառ զվրէժ արեանցն, զի « սպանաւ սրով » յամի 1250, որպէս նշանակէ ժամանակագիրն. այլ զիարդն ոչ գիտեմ, զի պակասի աստանօր առ մեզ մասն մի գրոց պատմութեանն Կիլիկիոյ, յորմէ թուի և ժամանակագրին առեալ զայս կարևոր յիշատակ. և մարթ է կարծել թէ անկաւ 'ի ձեռս Պայլին և իւրայոցն, և իբրև մատնիչ 'ի մահ վարեցաւ: Արեամբ նորա թուի շիջեալ և քինու մախանաց երկոցուն կողմանցն, և կարգեալ յիշխանութիւն հօրն' համշիրակ թագաւորին' Հեթում (չորրորդ, ըստ պայազատութեան դղեկին), հաւանութեամբ նորին, որոյ և դուստրն' Ալենա' կիռ Ալենա (և աղեղով ևս) Կեռան կոչեցեալ, ընտրեցաւ 'ի հարսնութիւն ծիրանածինն Լևոնի անդրանկան Հեթմոյ Ա: Միւս ևս դուստր այսր Հեթմոյ տեառն Լամբրունի' Ալիծ անուն' եղև սինէչալիս Կիպրոսի, այսինքն կին սենեսկալի թագաւորութեանն Կիպրոսի (Փիլիպպոսի Իպլինեան), և տայր գրել յամս 1310 և 1312 մատեանս սուրբս 'ի Կիպրոս կղզւոջ, 'ի ձեռն ճարտար քահանայի Ստեփանոսի Գոյներ Երիցանց կոչեցելոյ, մինչ քոյր նորա թագուհին Կեռան, (որ յետ Զապելի դստեր մեծին Լևոնի, վեհագոյն ամենայն թագուհեաց դրուատի), վաղավախճան լեալ էր, յամի 1285: — Էր Հեթմոյ և եղբայր մի Օշին անուն, տէր բերդին Մառնիշոյ, և մարաջախտ կարգեալ թագաւորութեան Հայոց, անդրատին 'ի 1277 ամէ, և մեռաւ յամի 1294. փոխանակեաց զնա Նորին որդին Հեթում յայնմ պաշտաման, ցօր մահուան իւրոյ յամի 1307. յաջորդեաց զսա 'ի մարաջախտութեան եղբայր իւր Սմբատ, տէր Պինակին և Ասկուռոյ, և մեռաւ յամի 1314: Իսկ Հեթմոյ տեառն Լամբրունի' աներոյ թագաւորին Հայոց' ոչ յիշի կատարածն, այլ թուի յառաջ քան զեղբայր իւր Օշին վախճանեալ. քանզի յամին 1285 տէր « աստուածապահ բերդիս Լամբրու» նի » ասի 'ի ժամանակակից յիշատակագրէ' անդրանիկն թագաւորին Լևոնի Հեթում (Բ), 'ի մօրէ թոռն Կոստանդեանն Հեթմոյ տեառն Լամբրունի. և զի յետնոյս ոչ յիշի զաւակ արու' թերևս իրաւամբ մայրենի ժառանգութեան իսկ ստացաւ Հեթում Բ զբերդն բազմայիշատակ, որ այնուհետև անհակառակ եղև արքունական ըստացուած. որպէս համարելի էր անդստին 'ի սպանմանէն Կոստանդեայ, և որդւոյ նորա Հեթմոյ' իբրև լիճ ճորտի' տուեալ 'ի կալուած: Առ սովաւ յիշի յամի 1263 գալ քեռ արքային Հեթմոյ' Կեռա Մարի (Մարիամ) կոչեցելոյ' կոմսուհւոյ Յոպպէի' առ հարազատս իւր, 'ի մխիթարութիւն, և հասանել նմա վախճան մահու անդ 'ի Լամբրուն բերդի, ուր և թաղեցաւ' 'ի Սկեւռայն: — Ի սկիզբն թագաւորութեանն Հեթում Բ' 'ի գահընկէցն առնել զԿոստանդին Բ կաթողիկոս, այսր 'ի Լամբրուն եդ զնա առ վայր մի 'ի դիպահոջ. — այլ ո՞ էր յայնժամ բերդատէրն, ոչ յիշի. թուի մի յեղբարց իւրոց, որպէս յետոյ կրսերն' Ալինախ, որ 'ի ժողովս Սսոյ և Ատանայ յամս 1307 և 1316 ստորագրի Տէր Լամբրունի[1]: — Առ սովաւ Ենրիկ թագաւոր Կիպրոսի' զամս հինգ (1306-10) արգելաւ 'ի դիպահոջ բանտի 'ի Լամբրուն, զի եղբայր նորա Ամաւրի' քեռայրն Օշնի և Ալինախի (փեսայացեալն 'ի Զապլուն) նենգաւ կալեալ էր զաթոռ իշխանութեան նորա, և Հայք զխնամւոյ իւրեանց զկողմն ունէին: — Յետ Ալինախի յետին ծանօթ տէր Լամբրունի' է սպարապետն Հայոց ժամանակին' Կոստանդին, որդի Հեթմոյ Պատմնչի' տեառն Կոռիկոսոյ, հօրեղբօրորդւոյ Լևոնի թագաւորի Բ, ընդ եղբօր իւրոյ Օշնի սպանեալ յամի 1329, հրամանաւ Լևոնի Դ: — Ըստ այսմ' յառաջնոյ անտի Օշնէ Գանձակեցւոյ' ցերկուս և կէս դարս ժամանակի' ինն միայն գտանին յիշատակեալ տեարք իշխողք Լամբրունի. որոյ' յետ այսորիկ անյայտ մնայ յիշատակն և օրհաս, այսինքն է աւերած նորին և ամայութիւն. այլ թուի հանդիպեալ մերձ 'ի կէս ԺԴ դարու, յորում ըստէպ արշաւանք լինէին Եգիպտացւոց և Թուրքմանաց կամ Գարամանից յերկիրս Լևոնեանց, մինչև իսպառ խցեալ նաւահանգստին Այասոյ և գրաւեալ 'ի սուլտանէն Եգիպտոսի. քանզի զգժնդակ ալէտս Լամբրունի յիշատակէ, առանց թուականի, կին մի մեծոգի, և որպէս թուի ազնուազգի, ծանուցանելով ընդ բերդին և զաւարումն որ 'ի նմայն չքնաղ աւետարանի Լամբրունեանց, այսպէս տալով գրել 'ի վերջին էջ գտելոյ մատենին, 'ի կուսն հին յիշատակարանին (որ յամի 1193).

« Զվերջին ստացող սուրբ Աւետարանիս' Ֆիմիս Այաս» ցի, կին Վահրամի. 'ի դառնութեան ժամանակի » աւարումն եղաւ Լամբրոն բեթի, և գերի բերին ըզ» սուրբ աւետարանս յԱյաս քաղաքի. Նայ ես Ֆիմիս » վասն սիրոյն Քրիստոսի գնեցի », և այլն: — Բաղդաւոր ըստ նմին համարիմ և ես, որ զյիշատակս Լամբրունի ծայրաքաղ առնելով, 'ի պահու յոր գրեմս' ունիմ 'ի ձեռին զնոյն զայն չքնաղ մատեան, զաչաց և զսրտի զբօսանս աննմանոյն Ներսիսի և հարազատին իւրոյ սեբաստոսին Հեթմոյ. և համբուրելով զնոյն' կնքեմ զդէպս անցից դղեկին, ընծայելով 'ի տես յարգողաց' և զպատճէն մի նմանահան երփնազարդ խորանաց այնր սոփերի:

[1] Այսպէս գրի և 'ի Դիւանս Վէնետկոյ, 'ի շարի անուանց թագաւորաց և իշխանաց Հայոց այնր ժամանակի. — Patti, III, 79, 81.

## ԴՐՈՒԱԳ (Դ)

### Ի ՍՈՒՐԲՆ ԵՒ Ի ՍԻՐԵԼԻ ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ

26. Այլ 'ի գեղոյ անտի բազմերանգ նկարուց և տաուից նիւթական ստացուածին' 'ի գերանիւթն յափշտակեալ մտաք' 'ի հանճար և 'ի հոգի ստացողին, զքանչացեալ հիանամ ընդ աստուածուստ շնորհեալ անկողոպուտն գանձ եկեղեցւոյս մերոյ և դպրութեան և համօրէն յիշատակաց, ընդ ՆԵՐՍԷՍ, որ յատուկ անուն իւրեան զկոչումն ԼԱՄԲՐՈՆԱՑԻ, որպէս անուանատու նմին հաւեղբայրն' զԿԼԱՅԵՑԻՆ. զոյգ մի վեհագոյն համօրէն բնակողաց յերկրին յայն անմատոյց ամրոցս. որոց' եթէ և սպառասպուռ քանդումն և յատակումն հասանիցէ, յիշատակաւ զուգիցս' անմոռաց մնասցեն 'ի դիւանս դարուց: Յետ Գրիգորեանց և Սահակեանց' Կլայեցին զկաթողիկոսականն գահ հաւասարէ նոցին. իսկ Լամբրունացին' յեպիսկոպոսականին բնաւից գեր 'ի վերոյ գտանի, զէթ 'ի հարըստութեան Կիլիկեցւոց, որպէս և յետ այնր' չերևի ոք հաւասար նմին կամ մերձաւոր. գուցէ և 'ի համօրէն Հայաստանեայս ոչ ոք զուգիցի նմա' պարառութեամբ պէսպէս շնորհափայլութեանցն և արդեանց [1], յայնքան կարճատև սահմանի քառասուն և վեց ամաց կենացն. ըստ ազնուական զարմին և վսեմական բարուքն, հարուստ և կանուխ հանճարովն, եռանդնաջարժ հոգւոյն և սրտին իմաստութեամբ և տեսութեամբք, աստուածաբանական և ներանձնական գիտութեամբք, հմտութեամբ պէսպէս լեզուաց և հրահանգաց, ներկուռ հռետորականաւն կամ ճարտասանութեամբ, փափուկ իմացուածովք որ յերգսն և 'ի չարականս, և գերագոյն յիուսաբուղխ ըղձանօքն և մաղթանօք' յեռլուքս 'ի Մեկնութիւնս Սաղմոսաց և Պատարագի, քան զորս չիք թերևս ազնուագոյն և աստուածայնագոյն ասացուած' 'ի լեզուս մեր: — Վասն այսոցիկ ամենեցուն, և այլոցն ևս բազմազան բարեմասնութեանց' յոյժ ճահապէս կչռեալ գտանի նմա 'ի կենդանութեանն իսկ, որպէս Յովհաննու Անտիոքացւոյ' Ոսկիբերան մակդիր, և Կլայեցւոյն' Շնորհալի, և Լամբրունացւոյս այսմիկ' կոչումն ՍԻՐԵԼԻ. զոր ոչ գիտեմ ո՛ր աստուածազդեցիկ անձն կենակից նմին' նախ արտասանեաց և պատշաճեցոյց. այլ ո ոք և իցէ, մի՛ անմասն եղիցի 'ի վարձուէ' յԱստուծոյ և յազգէս. ընդ նմին և կրկնակի զովանին Սամուէլ Սկևռացի վարդապետ և աշակերտ Լամբրունացւոյն. զորոյ' յամի 1190 ընդօրինակելով զՍաղմոսամեկնիչն' յիսկագիր օրինակէ հեղինակին, հոգեղէն իմն սրտառութեամբ ծանուցեալ զնա լինել և լինելի այր գերազանց, յաւել 'ի կուսն գրոցն համառօտել և զվարսն առ կենդանեաւն. որպէս « զի մի՛ մնասցէ յառաջել ժամանակին' տարակոյս սորին քննողի, ո՛վ և ուստի և զիարդն ». որպէս անգիտանամք, ասէ, զՄով. Խորենացւոյ, զԴաւթի և զՆարեկացւոյն. « յաղագս այսր' զսորայս մինչև ցայս' որ է կենաց իւրոց ժամանակ երեսուն և ութ ամ, ցուցաք համառօտ, և մաղթեմք Քրիստոսի տալ զայն մեզ և երկարութեամբ ամաց 'ի գլուխ' բարի հովուութեամբ և հանճարեղ այցելութեամբ, խնամիչ սուրբ ուխտիս (Սկևռայ) և առաջնորդ ժողովոյս: Եւ... եթէ այլ ինչ 'ի շնորհացն Աստուծոյ պտղաբերէ ծառս մեր տնկեալ 'ի գնացս ջուրց սուրբ գրոց, մանկազունից աշակերտաց սորին' տացէ Աստուած զօրութիւն' գրչաւ 'ի տառ գրոց ժողովել, և զընթացս յառաջատութեան վարուց սորին' զկնի եկելոցդ պատմել »: — Ըղձալի յոյժ էր և մեզ լրումն բաղձանաց կենսագրողին. այլ յաչս կենսատուին' 'ի սակաւու անդ լցեալ էր չափ և մեծ չափ կենաց Ներսիսի. զի յետ ութից ևեթ ամաց այնր թուականի' լրացաւ 'ի միջօրեայն հասակի. յորում այնչափ և այնպիսիս գործեաց և եթող յիշատակս պանծալիս, որչափ սակաւուց ոմանց յաջողեցաւ յ'երկարագոյն ևս կեանս իւրեանց: — Ոչ լոկ Սամուէլ, այլ և շատ ոք ծանեան զգերաստիճան շնորհս նորին' անդըստին 'ի տղայութենէ տիոցն, և « 'ի մտի եդեալ բազմաց, Զի՞նչ կամի լինել մանուկս այս, ասէին », ըստ այլոյ խորատես կենակցի նորին, Գրիգորի Սկևռացւոյ. որ լոկ եօթն ամաւ զկնի մահուան Սրբոյն գրելով նմին ներբողեան, վկայէր, եթէ « 'ի մտերմաց և 'ի ջերմագունից նախ քան զմեզ' առ այս ձեռնարկեալ էր ». և չիք ոք 'ի մերայոցս վեհից' որոյ այսպէս 'ի կեանսն և 'ի մահուն' յինքն ձգեալ իցէ' ոչ միայն զաչս և զսիրտ, այլ և զգրիչ: Եւ այնքան ծաւալեալ էր համբաւն և հռչակ, մինչ զի ոչ սպուժէր ինքն իսկ 'ի ջատագովութեանն առ Լևոն արքայ' ստիպել 'ի խոստովանութիւն, եթէ « Բարեհռչակիմ 'ի Լատինացւոց եկեղեցիսն և 'ի Հելլենացւոց և Ասորւոց, և կամ 'ի Հայաստանեա » [2]:

Քաջ իրաւունք էին զքանչացողացն և սիրարկուաց. զի ո՞ ոք իբրև զսա վեշտասանամենի արժանաւորապէս քահանայ կատարեցաւ, և 'ի նոյն տիս վեշտասան ամաց սկսաւ գրել զառաջինն մեկնութիւնս Գրոց սրբոց, որք մեծագոյն մասն երկասիրութեանց նորին են. – ո՞ քսանևերեքամենի կարգեալ հայր և տեսուչ, այսինքն է արքեպիսկոպոս մեծի նահանգին Տարսոնի, 'ի յիշատակագրաց այնր ամի (1175) Տիեզերական վարդապետ զրոշմի.

1 Ընտանեգոյն և խորագոյն ծանօթ նորա և ձեռբատուն սպասաւոր, Խաչատուր, իշխէ երդնուլ յԱստուած, թէ յայնմ հետէ որպիսի և ոք գայցէ' ոչ կարիցէ հաւասարել Ներսիսի. և արդարանայ ցարդ.

« Ու Աստուած . . . Որ ով լինի' զերթ զինք չըլինի »:

2 Գրեաթէ 'ի նոյն աւուրս խորհրդածութեանս իմոյ 'ի Ներսէս, գրէր զնմանէ և ոմն 'ի Փռանկաց գիտնոց անցից Խաչակրացն ժամանակաց, զայսպիսի բան. Ce Prélat est une des plus grandes figures, si non *la plus considérable*, de l'histoire religieuse des principautés latines d'Orient, par le rôle qu'il remplit et se faisant, parmi les Arméniens, le propagateur des doctrines, institutions, coutumes et idées importées en Syrie par les Francs, en même temps qu'il travaillait, de tout son pouvoir, à amener l'union des diverses Églises d'Orient. Devenu, à vingt-trois ans, archevêque de Tarse, sa charité et sa tolérance en firent le médiateur entre les diverses Églises Orientales: Grecs, Latins, Syriens écoutèrent sa parole avec avidité, et tous lui témoignèrent, non moins que ses compatriotes, la plus vive admiration, ainsi qu'un profond respect, et, par allusion au siège qu'il occupait, l'avaient surnommé le *Nouveau Saint Paul*. Une *Lettre* adressée par lui au roi Léon II nous est parvenue; c'est un des documents les plus curieux et les plus propres à bien faire juger la situation religieuse des Arméniens en face des Francs, en même temps que la rénovation religieuse, sociale et politique qui s'opérait, parmi eux, sous l'influence de ces derniers. — E. Rey, *Les Colonies Franques en Syrie*, (1883), page 85.

և 'ի միւսումն (1176) զանզուգական հոլովականն 'ի լոյս հանէ, զՊատարագամատեանին ասեմ, որ ոչ միայն խուսյոց գրաւոր երկոց գլուխ և նախադաս, այլ թերևս առ հասարակ հայերէն դպրութեանս, յայնմ սեռի գրուածոց. յորմէ ոչ հեռի գտանի ըստ այլ տեսութեան՝ առաստաքան և ներանձնական Սաղմոսամեկնիչն, գրեալ 'ի 26–8 ամս տիոյն (1178–1180). գործ կատարելագոյն հասակի և մեծի փորձոյ և հոգեկրութեան. զոր ոչ այլազգ կարէր ըմբռնել ծերունի վանական Նորին Սամուէլ, բայց եթէ վստահութեամբ Նորին՝ յետ Աստուծոյ՝ «յանհաս գիտու»թիւնն և յիմաստութիւնն իւր»: — Ո՞հանգոյն նմին ('ի նոյն ամս), գխտաց հիւսել և արտասանել զհրաշալի ճառսն 'ի Համբարձումն Տեառն և 'ի Գալուստ Հոգւոյն Սրբոյ, և 'ի համագումար ժողովի Հարց Հայաստանեայց եկեղեցւոյ 'ի Հռոմկլայն (1179), զՍինոդականութիւնն հռչակապանծ. միւս ևս հրաշակերտ գրաւոր գործոց, և անսուտ փաստ՝ ոչ միայն քաջարուեստ հռետորութեանն, այլ և անարուեստ՝ մանաւանդ թէ գերարուեստ չնորհացն աստուածայնոց, որովք առլցեալ՝ մանկագոյն ինքն ելով 'ի Հարս այնր ժողովոյ՝ ծերունեացն և հնագունից լեզու կայր և առաջնորդ, որպէս և յետոյ յայլ բազում դէպս: — Որքան քննեն միտք՝ այնքան և ափչին ընդ յոլովութիւն վաստակոց Նորին. յորոց կան մեան կենդանի վկայք յխնաթիւ գրաւորքն ընդ մեծ և ընդ փոքր, է որ հեղինակութեամբ և է որ թարգմանութեամբ՝ 'ի յունէ և 'ի լատինէ և յասորւոյ. թող զընդօրինակութիւնս պէսպէս մատենից սրբոց, կամ զծանօթութիւնս և զլուծմունս 'ի լուսանցս գրոց, յորոց եհաս և մեզ տեսանել զոմանս. և մի յայնցանէ է՝ այս պատճէն խկատիպ մատանց Նորին գրչութեան[1]:

Ի խոնարհել արեգական կենաց Շնորհալւոյն՝ առաջին դրչի ԺԲ դարու, յերկրորդումն կիսի՝ արփիանայր մերս Լամբրոնացի. 'ի քերդողութեան անհաւասար նմին, 'ի հռետորութեան՝ գերազանց, որպէս և աստուածաբանական տեսութեամբք, լեզուական հմտութեամբ և այլովք ևս մասամբք, որովք միահամուռ՝ զլէ կարծեմ զամենայն ծանօթ Հայ որերով. ընդ գրաւորին նկատելով զնա և 'ի գործնականն, իբրև ամենահաս ամենուրեք, յապատս և յանապատս, 'ի մենաստանս և 'ի մայրաքաղաքս. 'ի վաներոյ և 'ի վարժերոյ, յեկեղեցեաց և յարքունեաց՝ միապէս և միակ ընտրեալ և կոչեցեալ 'ի պէսպէս տեսչութիւնս, 'ի թագաւորէն և 'ի կաթողիկոսաց Գրիգորեանց, մերթ առ ինքնակալն Ալամանաց, առ սատանիկսն, և առ եպիսկոպոսունս Արևմտեայցն եկեղեց յաղագս միութիւն Երուսաղեմի. մերթ 'ի դուռն արևելեան կայսեր 'ի Բիւզանդիոն, և մերթ յԱնտիոք առ Բրինձն փռանկաց. զիւրաքանչիւրոց ազգաց գիտելով զբարբառ. և երբեմն 'ի Հռոմկլայն առաքեալ (1189), երբեմն յԵրուսաղէմ ուղևորեալ (1179) թերևս զատ յուխտից՝ յայլ ևս գործ կարևոր. թող զպարապմունսն 'ի վանորայսն Հայոց, Յու-

[1] Յայտպիսեաց սակի են, Ս. Եփրեմ Մեկնութեան համաբարբառ աւետարանաց, բովանդակն ձեռնագիր Լամբրոնացւոյս՝ յամի 1195: — Պորտադմանք Կէտրչէ և Ս. Դիոնեսիոսի Արէոպագացւոյ. Ճառք ինչ Ս. Աբանոսի, և այլ ինչ մատեան հաւանօրէն Նորին մատանց գիր: Պահի և 'ի մեծի մատենադարանին Բարիզու մատեան նորոց կտակարանաց յունարէն, որոյ հանդէպ 'ի միւսում իջի հայերէնն է գրեալ 'ի սմանէ, հանդերձ այսպիսի յիշատակարանաւ. «Ներսէս նուաստ » եպիսկոպոս Տարսոնի, սիրով վաստակաւոր 'ի սուրբ մատեանս, զոր » ծերացեալ գտի ըստ հելլենացւոյդ, և նորոգեցի ըստ հայւոյդ. » շնորհի աղաւթից լինիմ 'ի վայելողացդ արժանի »: Երիցագոյն 'ի սոսա է գրչութիւն գրոցն Կիւրղի հանդերձ ծանօթաբանութեամբք 'ի լուսանցսն, յամի 1175, օրինակաւ և ձեռօք որ տեսանի 'ի վերդ:

նաց, Ասորւոց և փռանկաց, որք յիշխանութեան Լևոնի, որք 'ի Սևու լերին, և որք 'ի սահմանս Անտիոքայ և Հայոց ծովածոցի. յորոց՝ «որպէս գործաւէր մեղու, (աւէ » ոճն յիշատակագիր), 'ի բազում ծաղկանց գրխրապատիկ և զանազան ժողովեաց զբարեաց նախանձ, » յամենայն նախնեաց սրբոցն գերազարդից. . . իբրու » երկրորդ ռաբբի 'ի յետին ժամանակս յազգիս մերոյ»: — Ո՞ր թողցի և վերատեսչութիւն ուխտիցն Սկևռայ, Անապատին և վանիցն, զոր նախնեաց իւրոց հիմնեալ, և հօրն և եղբօրն ընդարձակեալ և վայելչացուցեալ՝ 'ի նա յանձնեալ էր. ո՞ր մանաւանդ այցելութիւն մեծի նմա հաստատցեալ աթոռոյ հայրենեացն Պօղոսի, զորոյ՝ ամենայն տեսող վկայէր ժառանգեալ և զնախանձ հոգևոր. յոր՝ և 'ի բարձանց անտի Սկևռայ, որպէս 'ի սենեկէ Սինեայ սրբոյ, «որ ըստ օրէ իջեալ 'ի ժողով քաղաքին » Տարսոնի, մխիթարէր զնոսին վարդապետական բանիւ, » և հանգուցանէր յինքն զամենայն տեսողս և զլսողս. ոչ » միայն զոր 'ի Հայոց ժողովս, այլ և Ֆռանգաց ազգ և » Յունաց. իւրաքանչիւր ազգացն կարգաց և կրօնից տեղեակ գոլով, և յընտրութիւն՝ հաւանեցուցանող կամ » հաւանեալ»[1]: Քանզի որպէս և ինքնին վկայէր և գրէր ընտրեալն այն և ընտրող, բաղձայր անխտիր զամենայն ազգ և լեզու 'ի մի ձուլել՝ սիրով և հաւատով 'ի Քրիստոս, և ասէր. «Է ինձ Հայն որպէս զԼատինացին, և Լատինացին որպէս զՀելլենացին, և Հելլենացին որպէս » զԵգիպտացին, և Եգիպտացին որպէս զԱսորին»[2]: Զայսպիսեաց զիւրոց առանձինն իմացուածոց՝ ունիմք 'ի ձեռին զինքնագիրն բանից, դրոշմեալ 'ի կակուղ թղթի, յամի 1195, 'ի յիշատակարանի անդ մեկնութեան աւետարանաց Եփրեմի. յոր դրոշմեալ է և զիւր կնիք վաւերականի. զոր մարթ է ասել յանկագոյն դրոշմ սրտին հեզութեան. Գառն Աստուծոյ. որպէս ցուցցէ պատճէնս այս.



Արդ յայսքան բազմապատիկ և 'ի բեղնաւոր արդասիս մտաց, ձեռին և լեզուին, ըստ իւր իսկ ասից, յառեալ նկատողական աչօք, ոչ կարեմ չհաւանել թէ իցէ 'ի նա հեղեալ առանձինն իմն ներգործական շնորհաց Հոգւոյն Սրբոյ. որում դարձեալ յինքենէ առնում փաստ՝ զասելն վասն նախընծայ և նախընտիր երկասիրութեանն, Պատարագամեկնչին, թէ՝ թէպէտ և իւրոյ ձեռին և մտաց սպասաւորութեամբ, այլ «ասացաւ 'ի Հոգւոյն Սրբոյ... » 'ի ժամանակ կենաց մերոց մինչ էի քառասնորս ամաց, » և կայի 'ի լռութեան և 'ի միայնութեան՝ 'ի մէջ լերանցն » Տաւրոսի»: Արդարև դադար հանգստական ցօղման շնորհաց Հոգւոյն Աստուծոյ. աղօթանուէր լռութիւնք և միայնութիւնք. յորս՝ հանգոյն Յովհաննիսեանց յիսուսամերձից՝ տաճարանայր և եղանիւր առաքինի, բոլոր շարժմամբ հոգւոյ և մարմնոյ. զոգչիր հանգոյն նոցին և 'ի մայրենի արգանդէ նուիրեալ: Քանզի մինչև եղեալ՝ յաստուածուստ ուխտիւք խնդրեալ էր 'ի ծնողացն, 'ի բարեպաշտն Օշնէ և 'ի շնորհագեղն Շահանդխտոյ, և ուխտիւք նուիրեալ Աստուծոյ. յորմէ, եթէ առ վայր մի կիսովի գողանալ զնա մտաբերեցին ծնողքն՝ հրաշացեալք

1 Գրիգոր Սկևռացի, 'ի Ներբողենին:

2 Թուղթ առ Լևոն արքայ:

'ի մովսիսանման երեսացն կոյսութիւն, և 'ի փառս և 'ի բարձս աշխարհի փայլեցուցանել, յանկարծահաս հիւանդութիւն և մօտ մահու մանկական դիմացն սթափեցոյց զնոսա. և փոյթ ընդ փոյթ ընթանայր մայրն մահաջուլ՝ տանել քան զմանկիկն՝ յոտս Տիրուհւոյն, 'ի վանս Սկևռայ, և կրկին անդրժելի ուխտիւք թափէր զոգին խունձապեալ՝ 'ի մատաղուտ եկիցն, և յանգիտ կորըստենէ հանդերձելոց արժանեացն և համբաւոյ[1]. և այնուհետև ընդ Աստուած և ընդ զիրկ գորովոյ իւրոյ բաժանեալ զնա՝ կրթէր և մարզէր 'ի ձեռն սրբակրօնից անձանց, նախ յաստուածայինսն և ապա 'ի մարդկային մըտաց հրահանգս. զԱստուածոյն Աստուծոյ տալով լիուլի, և զմայրենին անթերի պահելով ինքեան. իբրու զի, թողոյր նմա դեգերել յաղօթանոցս և 'ի սրբարանս, յանապատս և 'ի վանորայս, այլ ոչ ներէր մեկնել 'ի հեռաւոր օտարութիւն. յոր՝ թէպէտ բազում անգամ փորձեաց դաղտագողի խուսափել մանուկն՝ տանել աստուածասէր քան ծնողասէր, և ընդ զանխուլ ափափոյս լերանց՝ կոչկոճեալ դարչապարօք և քրքնեալ ոդեսոուք՝ երթալ մինչև 'ի գաւառ Սրբոյն Գրիգորի, 'ի տեղիս ճգնութեանն Նորին, 'ի հռչակաւոր և յոգնաթիւ վանորայս Դարանաղեաց, այլ աչալրջութիւն մօրն դէտս և հետահանս կացուցեալ կորզէր և դարձուցանէր զնա 'ի սեփական սահմանս սիրոյն և հայրենեաց. և այս ոչ միայն 'ի տղայութեանն ժամանակի, այլ և 'ի քահանայութեան և յեպիսկոպոսութեան, բազում անգամ վարէր զնա սէրն վերասլաց՝ յանապատս և 'ի զերծ տեղիս, իսկ գութ ընտանեացն ստիպէր 'ի տուն և յեկեղեցին Տարսոնի: Նաև 'ի վերջին իսկ ամս կենացն՝ մինչ առաջնորդք ոմանք արևելեայ Հայոց երկմտէին և յաչաղէին զնա, և յօժարէր Նա տարաղէմ երթալ առ Նոսա, խօսել, վիճել և հաւանեցուցանել, խիթայր տակաւին թէ ընտանիքն գորովեալք խափան լիցին ուղւոյն:

Այսպէս ճշմարիտ Սիրելի էր Ներսէս և Աստուծոյ և մարդկան մտացեաց. և որքան յաւելոյր 'ի սէր իմանալեացն, այնքան և սիրելագոյն և զարմանալի գտանէր յաչս տեսողացն. զոր թէ և խափանել իմն ինքն փափագէր, այլ կարողանայր ոչ. զի որպէս յանհնարիցն է խափուցանել զլոյս արեգական միջօրէի, այսպէս և զատ յաստուածուստ արտափայլեալն սէր և շնորհս: — Իցէ՞ արդեօք մարթ՝ և յաւելուածոյ իմն շնորհաց ասել զնա ընկալեալ 'ի զգուիլն 'ի գիրկս յատուկ Շնորհալւոյն, 'ի գալ տորին երբեմն 'ի Լամբրոն յետ հաշտեցուցանելոյ զհայր Նորա Օշին ընդ հզօրին Թորոսի. կամ յընդունելն զնա՝ յետ ամաց՝ 'ի Հռոմկլայ, դարձեալ 'ի մայրենի գրկաց, և ընդ քահանայական շնորհին և զհոգւոյն իւրոյ հեղուլ 'ի նա զօծութիւն, ժառանգեցուցանելով զոյգ և զանունն Ներսէս՝ փոխանակ Սմբատայ՝ որով կնքեալն էր յաւազանէ: Չէ հեռի յայսմ իմացուածոյ և խորատես գրիչն հին, որ յետ ասելոյ վասն Կլայեցւոյն, զկնի Լուսաւորչին, Ներսիսի և Սահակայ, « յետ յոլովից՝ 'ի վախճան » ժամանակիս և 'ի վերջին դարու, յանբարի և 'ի նուա» գեալ ժամանակս, իբր 'ի դրունս ձմերայնոյ՝ 'ի լռնա» ցեալ ձուռ կամ ողկոյզ ինչ զարմանալի փայլեաց և » երևեցաւ 'ի զարմէ և 'ի ցեղէ ընտրութեան մեծի Լու» սաւորչին, համեմատ առաջնոյն՝ երկրորդ գերամա» քուրն Ներսէս, որ զհայրենին յաջորդեաց գահ և ա» թոռ հայրապետութեան 'ի Կլայն Հռոմկլան, և զա» մենայն նորոգեաց ըստ նախնի հարցն բարեզարդու» թեան »..., յաւելու և ասել. « Որում, 'ի նորին արեան » մերձաւորութենէ՝ մանաւանդ յաշակերտութենէ, լու» սափայլն բանիւ և մաքուրն վարուք՝ յետ նորա ծագեաց » և փայլեաց՝ նորին ձեռնասուն եղբօր ծննդոյ որդի՝ » սուրբ և երջանիկ հայրն մեր այս Ներսէս. որ ըստ ե» ռանդնոտ բորբոքման 'ի սրբագործ հարազատ սէրն, » ըստ Ջեբեդեայ Որդւոյ, զՍԻՐԵԼԻՆ ունի յատկութիւն » մակակոչութեան »: — Ընդ այսոցիկ հարկ է իմաստասիրել, զի ըստ կանուխ բղխից ծնողացն՝ պարգևեցաւ նմա յաստուածուստ հանճար և ընդունակութիւն ոչ սովորական, այլ սողոմոնական. և կարէր ընդ նմին, և որ ըստ նմանէ՝ մերոյս Յովհաննու Օձնեցւոյ՝ ասել զինքն մանուկ սուր և մտավարժ, որ յանկատար տիոց անտի՝ « յօժա» րութեամբ իմացաւ տեսանել յաստուածայինս և 'ի գե» րաբանս ». և ոչ միայն արագ արագ ըմբռնէր զընձեռեալսն նմա իմաստս և ուսմունս, այլ և « ուր տեղե» կանայր զիմաստուն հանճարեղ ուսուցչաց՝ 'ի մերձա» կայս և հեռաւորս, վաղվաղակի անդր հասանէր, զօրէն » անօսրաթև և իմաստուն թռչնոյ՝ 'ի վերայ թռչելով » մարգաց հին և նոր կտակարանաց », և այլն: Բարեբաստիկք արդարև որք այնքանոյ աշակերտի արժանացան լինել վարժապետք և դաստիարակք. որպէս՝ բազում անգամ յիշեալդ Սամուէլ, Յովհաննէս՝ որ յետոյ յիշեսցի, և վարդապետն Ստեփաննոս Ցախորեցի, յորոյ խնդրոյ արար Ներսէս զՄեկնութիւն Ննջմանն Յովհաննու (Էր ընդ եղբարսն), և հարկ է մի յառաջին երկանց վաղահաս մտացն լինել, զի լոկ Ներսէս կոչէ զինքն, և զորովանօք բորբոքի առ դաստիարակն, և բազում պատուով[2]. որ և թուի գոլ մի 'ի նշանաւոր վարդապետաց ժամանակին և 'ի վանահարց:

Հասարակեալ էր յայնժամ դարն ԺԲ. Կիլիկիա փոխեալ յերկիր Թորոսի և Լևոնի. աշխարհն հանդարտեալ, սահմանք հաստատեալք. բարգաւաճէին յանդորրու և

[1] Երախտահատոյց լինէր Տիրամօրն և ինքն մանուկն՝ այն ինչ հասեալ յաստիճան եկեղեցական, ներբողելով զնա յաւուր տօնի Վերափոխմանն. « Իբր զանկեալ 'ի նմանէ որմ՝ 'ի մէջ բիւրաւոր » անեղանց յաստուածատունկ սուրբ այս տաճարի », որպէս ասէրն իսկ. ես, « Հանգոյն Սամուէլի եմ ես ընծայած Մօրս Աստուծոյ, » 'ի ծնողաց նուիրած՝ կրկնոցաւ 'ի պաշտօն տաճարիս սնեալ ». և Նախաբարբառ շրթամբքն հրաւիրէր զժողովուրդն « լսել զխորհրդ» անուածն՝ յաւուրս մեծի, իբր 'ի սեփական և ընտանին ձայնէ » սուրբ և ամենօրհնեալ Կուսի »:

[2] « Գիր քո պատուականութեանդ՝ միանգամ և երկիցս, Հայր » սուրբ, եհաս առ իս, փութացուցանող առ 'ի խնդիր քննութեան » աստուածարան Առաքելոյն Յովհաննու աղօթից », և այլն... « Որ » ամենայնիւ ես ճշմարտասէր և իմաստասէր. մինչ զի ոչ քոյովդ » բաւականացեալ, այլ և զմեզ ձգեցեր հաւանութեամբս 'ի յանդգնութիւն, ո՜ հայր պատուական Ստեփաննոս. զորոյ 'ի գլուխ » ած շնորհն Աստուծոյ՝ զխնդրելիս, 'ի ձեռն առաքելոյ գործարանի, 'ի փառս իւր և 'ի վայելս քումդ հաւատոց և ճշմարիտ առ » Աստուածարանս սիրոյ... փութացեալ միայն հնազանդութեամբ » որդիական հպատակութեամբ՝ պատճառ նիւթել իմաստնոյդ՝ » առ և սորին իմաստութիւն բարձրանալ », և այլն:

մտաւոր և հոգևոր հրահանգք. յայնժամ՝ ըստ երգողին՝ « զուարթացան (և) բոյսք եկեղեցւոյ. և գեղեցկացան Ան- » ապատք մաքուր կուսութեամբ». գոգջիր իւրաքանչիւր 'ի Պարոնայց կանգնէր մէն մի ամրոց և մէն մենաստան. վանորայք ելևելս առնէին զիրերօք 'ի պայծառութեան և յուսմունս. յորոց միջի ընդ յառաջադէմս և լամբրու- նեանն հանդիսանայր Սկևռա. որոյ պտուղք յայտնի են, (յիշեալքն Սամուէլ և Գրիգոր, և յիշելիքն Ներսէս քեռ- որդի մերոյս դրուատելոյ, և յետոյ Գէորգ մեկնիչն Ե- սայեայ, և այլք). ապա կարէր և մերս Ներսէս գտանել 'ի սոսին բաւական ինչ ճարակ մտացն, այլ ոչ ցյագուրդ լայնութեան և բարձրութեան Նորին. զոր՝ ընդ բովան- դակ կեանսն ցանկորդէր լնուլ՝ ուստ ուստեք և էր, յազ- գայնոց և յօտարաց. և առաջին սա բանայր շաւիղ ուս- ման լատինականին լեզուի, 'ի տղայութենէ իսկ խնամօք մօրն վարժեալ գոլով 'ի հելլէնն՝ և յերկոցունն ևս լեզուաց ոչ սակաւ են Նորա Թարգմանութիւնք. և անտերկբայա- պէս՝ առաւել քան զԹարգմանեալսն՝ ընթերցեալքն. բա- զում հաւանութեամբ երևի հմուտ գոլ և եբրայեցական լեզուի[1], այլ և ասորւոյն[2]. և ահա այսոքիկ ևս միւս այլ աղբիւրք գիտութեան և գերազանցութեան Ներսիսի։

Այլ 'ի վեր քան զայսոսիկ՝ Ներքսագոյն առիթ և օճառ զարգացմանն, առաքինաջան կրթանքն են, գերամաքուր վարքն, աղօթասիրութիւնն, ճնշումն մարմնոյ՝ յամենայն դիւրութեանց, մինչ և 'ի կարևոր կերակրիկն և 'ի քունն անգամ. յորս՝ առանց ինչ առաւելաբանութեան՝ մարթ է ասել զնա անքուն և անսուաղ. և այսու օրինակաւ՝ կրկնապատկեալ և յերկարեալ զժամանակ կարճատև կենացն։ Զի, ըստ վկայելոյ ականատեսից, սպասաւորն՝ որ տանէր Նմա օր ըստ օրէ զօգէպահիկն և դնէր 'ի պա- տուհան խցկանն, յերկրորդում աւուր անթերի գտանէր զայն, և կամ փոքր ինչ մասամբ պակասեալ. քանզի յա- ճախ սակաւ ինչ ընդով շատանայր։ Եւ որպէս չէին Նորա սեղանք, սոյնպէս և ոչ մահիճք. « մինչ զի ոչ երբէք մեկ- » նեաց զոտս իւր յանկողինս՝ 'ի տուէ կամ 'ի գիշերի. այլ » զցերեկն պարապէր աղօթից, ընթերցման սուրբ գրոց » և վարդապետութեան և ամենայն բարի գործոց. և զգի- » շերն՝ Նստեալ գոլով յաթոռ ինչ՝ անդ վճարէր զքնոյն » պէտսն առ սակաւ մի. և վաղվաղակի զարթուցեալ՝ » կանխէր յաղօթս... ընթեռնոյր և ուսանէր միշտ. և » գրէր անհանգիստ զցայգ և զցերեկ »[3]։ Ի դէպ է ասել թէ այսպիսի բռնազբօս հնարիւք խաբեաց զմահ. և զէթ տասն ամ գողացեալ 'ի ստուերագիր մահուանէ՝ 'ի թըմ- բրութենէ քնոյ ասեմ, ծախեաց զնոյն 'ի խոկմունս և 'ի լուծմունս աստուածաշունչ տառից, որոց իբր երկոտա- սանիցն ծանօթ են մեզ Նորայն Մեկնութիւնք[4]. վասն որոյ գեղեցիկս խորհրդածէ Ներբողիչն Գրիգոր. « Թէ » զայլովքն զամենեքումբք զանց արարից 'ի վերուստ առ » 'ի Նա պարգև շնորհի, այս միայն բաւական 'ի հիացումն » ածել զլսօղս ». և, « եթէ ումեք ըղձալի իցէ անհետա- » զօտելի աստուածային խորոցն լինել հասու, զնա ըն- » թերցցի »։

Այս իսկ էր կէտ ըղձից և ջանից երանելւոյն, ոչ միայն լինել հասու՝ այլ և առնել զայլս, մանաւանդ զդաս քա- հանայից և վանականաց՝ աստուածեղէն գրոց և կարգաց. յոր սակս և գրեաց վասն առաջնոցն՝ զՊատարագամեկ- նիչն, զԽորհրդածութիւնս հաւատոց և կարգաց եկեղեցւոյ, որք սովորաբար 'ի Նոյն գիրս յարին. և զկանոնս Օրհնու- թեանց պակասեալս 'ի Մաշտոցի[5]։ Թարգմանեաց 'ի հռովմայեցւոյն զԳիրս կարգաց լատին եկեղեցւոյ, և զՊա- տարագ եկեղեցւոյն Հռովմայ[6], և զՎիճակագրութիւն կամ Կարգ եկեղեցւոյ պատրիարքական աթոռոց, զարա- բեալն 'ի Նիլոսէ՝ Դոքսապատրի անուանելոյ՝ յելս ԺԱ դարու, փոխեալ 'ի հայ յամի 1179։ — Վասն երկրոր- դացն՝ ետ հաւաքել և պարզել զվարս Հարանց. Թարգ- մանեաց զՏրամախօսութիւնս Ս. Գրիգորի Պապին, ըղ- կանոնս Ս. Բենեդիկտոսի, և զՍահմանադրութիւնս վանաց Նորին զյերիւրեալն 'ի Վրնջեր (Պեռանժէ) վարդապետէ Նորին՝ կարգի։ Այսքան մեծ խնամով հոգայր և յարդա- րէր զկենցաղավարութիւն վանականաց, սիրողն և միշտ 'ի մանկութենէ 'ի միայնութիւնս Կիլիկեան գաւառաց, առ կարկաջահոս վտակօք Կիւդնոսի և Ժեռակրի. արտաքոյ և հազուագիւտ իմն բաղդիւ արժանացեալ, յայսմ դա- սու՝ Նուիրել և ուխտել Աստուծոյ զիւր իսկ Նուիրողն և զուխտող, և զծնողն իւր ըստ մարմնոյ՝ ծնանել հոգևո- րապէս, և մուծանել 'ի կուսաստան՝ զմայր իւր Շահան- դուխտ, հանդերձ երկորքումբք քերրքն հարազատօք, Տալի- թայիւ և Շուշանաւ. հուպ իմն առ իրեար զուգելով զա- ղաւնիս և զտատրակս անապատասէրս. որոց մրմունջք՝ առ կենօքն՝ առաջի իւրական սրբոյ սեղանոյն, և հեծու-

1 Ի մեկնութեան գրոց ԺԲ Մարգարէիցն, զոր Թուի արարեալ յառաջին ամս գրչութեանցն, տեղւոյ (իբրև 50 անգամ) յիշէ զբնա- գիրն եբրայեցի զանազանեալ 'ի հայ Թարգմանութենէս. և զի ոչ երևեցուցանէ յայլմէ մեկնչէ առեալ, այն զի և սակաւք են մեկ- նիչք այսոցիկ գրոց Փոքր մարգարէից, աներկբայ Թուի ինձ ընդ բուն բնագրին բաղդատեալ զնախնեացն մերոց Թարգմանութիւն։

2 Ծանուցանէ ինքն 'ի յիշատակարանի Թարգմանութեան Օրի- նագրոց, զի յամի 1193 խնդիր առնելով Գրիգորի Տղայոյ և ոչ գտա- նելով գիրս օրինաց 'ի հայ լեզու, « պատահեալ անդ ('ի Հռոմկլայ) » յԱսորւոց Թէոդոս անուն՝ կիրթ յիմաստութեան՝ քահանայ, » յայտնեաց Տեառնն՝ զոր գայր առ ինքն այս համառօտ Քաղաքա- » կան օրինադրութիւնս. և հրաման տուեալ ինձ... յեղուլ յԱսորէ 'ի » Հայս.... յետ որոյ ապա և 'ի Հելլենացւոց գրոց արարի Թար- » գմանութիւն Մովսիսական օրինացդ, և Լեւոնի և Կոստանդեայ օրի- » նացդ », և այլն. յետոյ բանքդ կրկին հաստատեն զի զանձն առ Թէոդոսի չէր ուրեմն Հելլենարէն, այլ ասորերէն, որպէս և ցարդ զամենն այն։ Ի դէպ է կարծել, եթէ 'ի գեղերէն Լորում 'ի Վանս բայս Սեաւ լերին՝ ուր և Ասորւոց վանք էին, հմտացաւ Ներսէս և սեմականացն լեզուաց, Թէ ոչ յառաջ իսկ շնորհիւ Ս. Հոգւոյն։

3 Նոյն կենսագիր ասէ և այլուր. « Ցամենայն երեկայի մինչև » այրէին մոմեղէնք՝ գրէր. և ապա անդէն յաթոռն իւր Նստեալ՝ ա- » կաւ մի Ննջէր. և խոկոյն յարուցեալ երթայր յեկեղեցին, ուր սաղ- » մոսեաց 'ի Ներքս պաշտել զամենայն աղօթս. և զառաջին պաշ- » տօնն՝ 'ի ձայն պաշտել տայր »։ Ցիշէ և ձերբասուն իւր խաչա- տուր զՏէրն Ներսէս՝ առաջին կանոնիկն։

4 Այսոքիկ են ծանօթքն մեզ. Մեկնութիւնք գրոց Արարածոց, Սողոմոնի, այսինքն Առակացն, Ժողովողին, Իմաստութեանն և Եր- գոց երգոյն, ԺԲ Մարգարէից, Դանիէլի, և Սաղմոսաց. և 'ի Նորոց կտակարանաց՝ Մեկնութիւն Մատթէի քաղուածոյ, որպէս և Թըղ- Թոց կաթողիկէից, Տէրունական աղօթից, և միջնորդին 'ի սուրբ խորհուրդն, որ և կոչի էր ընդ նորա. և 'ի Պատարագամատոյցն գրելով և զՄեկնութիւն Տէրունական աղօթից և զՀաւատոյ Համադաւանին։

5 Որպիսիք են, կանոն ինչ ջուր օրհնելոյ, Պղծեալ ջրհոր օր- հնելոյ, և Ձեռնադրութեան կարգաց լրմունք։

6 Ոչ գիտեմ առաւել որպիսի ինչ են երկաքին այսոքիկ Թար- գմանութիւնք, Թերևս առաջինն նշանակիցէ զհարցս Օրհնութեան կայսեր և Թագաւորի։

*թիւնքն՝ յետ մահուն հնչէին 'ի վերայ գերեզմանին, և անդրադարձեալ: — Ցուցեալ վասն համօրէն ուխտի եկեղեցւոյն և հոգեսիրաց անձանց՝ ընդ պէսպէս մեկնութիւնս սուրբ գրոց՝ և զհանգանակն[1], և զայլ ինչ եկեղեցական արարից, զլուծմունս դժուարիմաց բանից սրբոց Հարց, որպէս զԴիոնեսիոսի և զՆարեկացւոյն, և զայլ և այլ խնդրոց աստուածաբանականաց, յորս տարակուսին և հանճարեղք, զվարս և զվկայաբանութիւնս սրբոց, զկրօնս չարականաց[2] և տաղից[3]. և ճառս կամ քարոզս տօնականս և խրատականս[4]: — Վասն ամենակալեաց եկեղեցւոյ՝ զԱստուածաբանութիւնն, զՊատճառս թղթոց միաբանութեան Հայոց և Յունաց, և գիր իսկ վասն այնր խնդրոյ յայլում նուագի՝ սակաւուք յառաջ քան զվախճանն (1197) Նախրակութիւնն 'ի Կ. Պօլիս. ուր այնքան ճարտարութեամբ և ուղիղ սրտիւ և մտօք, միանգամայն և ազգային ոգւով գիտաց ասել և պատասխանել վարդապետաց Յունաց, տեղի տալ խնդրոց նոցին արդարապէս ջատագովութեամբ հայրենի եկեղեցւոյն, և միակ միջնորդ միաբանութեան՝ խնդրել և 'ի Յունաց պայմանս ինչ, մինչև ափիբերան կացոյց զնոսա, որք ոչն հանդուրժէին զիջանել և հեռանալ յիւրեանց ինչ աւանդից՝ օտարացելոց ոչ միայն 'ի Հայոցս, այլ և 'ի Հռովմայեցւոց. և դարձաւ՝ թէ ոչ շահու, որ յիւրմէն իսկ ոչ կախէր, այլ յաղթանակաւ արդարակորով արամաբանութեան, և գովութեամբ նոցին իսկ անհաւանիցն[5]. այլ և ոչ սակաւ տրտմութեամբ ընդ ամպարհաւաճ բարս նոցին, որպէս նշանակէ 'ի յիշատակարանի ուրեք, գտեալ զնոսա ասելով՝ ոչ միայն անծանօթս վաղընջուց թղթակցութեան երկոցուն ազգացն՝ զհաւատոյ խնդրոց, այլ և « թանձրաբարբառք և հրէական կամօք ընդ նիւթ կապեալք, որք » ոչ ախորժեն ծառայել Աստուծոյ՝ նորոգութեամբ Հոգւոյն, այլ հնութեամբ գրոյն. և ատրջացեալ 'ի հոգևոր » կամս մեր՝ դարձաք յիմաստախոհ յուսոյ սոցա՝ ամօթով»: — Ի սոյն հոգևոր պէտս համարեսցի և թարգմանութիւն թղթոց քահանայապետացն Լուկիոսի և Կղեմայ Գ. առ կաթողիկոսն և առ Լևոն. և առ 'ի լուսաւորել զմիտս և զկարծիս տարակուսելոց ոմանց՝ թուղթք իւր առ Օշական ճգնաւոր, առ Յակոբ Աւարի, և բազում անգամ յիշեալն թուղթ առ Լևոն արքայ՝ ընդդէմ բանսարկուաց Հաղբատեցւոց, զոր և մարթ է կլիկերոնական իմն ջատագովութիւն անձին գրել: — Ցայսոսիկ յաւելցին և թարգմանութիւնք Միացորդաց սուրբ գրոյ և մերձաւորաց 'ի նոսին, որպէս Ցայտնութիւն Յովհաննու և Մեկնութիւն նորին յԱնդրէէ եպիսկոպոսէ Կեսարացւոց, Թուղթն Բառնաբայ առաքելոյ, զոր յայտնէ ինքնագիր յիշատակարան նորին 'ի ստորին լուսանցս օրինակի միոյ յունական բնագրին[6]. այլ թարգմանութիւնն տակաւին չերևեցաւ ուրեք: — Վասն քաղաքական և աշխարհական դատուց՝ թարգմանութիւնքն Օրինագրոց կայսերաց Յունաց Լևոնի և Կոստանդեայ և այլոց[7], Քաղաքական և Զինուորական օրէնք նոցին, որոց՝ պատկառ կալ մարզէր զմարտիկսն Հայոց[8], Կարգ օրհնութեան թագաւորաց և կայսեր 'ի լատին լեզուէ. և գիրք Մարդակազմութեան, ըստ վկայութեան համառօտողի ուրուք վարուց նորին, թերևս մեկնութիւն գրոց Նիւսացւոյն. հանդերձ այլովք, յորոց ո՞ գիտէ, որքան տակաւին անծանօթ մնայ առ 'ի մէնջ:*

*Ոչ պակաս քան զգրաւորական վաստակսն՝ այլ և աւելի արժան է անկրկնապէս ընդունել զվկայեալն 'ի կենսագրաց նորին, և զոր վասն բարեկարգութեան եկեղեցեաց, ոչ բարոյականին միայն, այլ և արտաքին շինութեան և պայծառութեան ջանս. յոր յաւել և զնկարագրութիւն անօրինական և խորհրդական պատկերաց, և զլրումն պակասութեան սպասուց՝ իւրք իւրք պատճառաւ խափանելոց: Եւ վասն այսոցիկ երկուց գործոց, գրաւորականին ասեմ և եկեղեցական յարդարմանց, ծախեաց վասն մէն միոյ՝ զատ յայլոց բազմաց՝ զերիր մասն 30,000 ոսկի դահեկանաց՝ զոր յառաջին ամսն տուեալ էր նմա հօր իւրոյ Օշնի, աճեցուցանել զսպասս սրբոց տաճարաց, և զգիրս՝ գնելով կամ տալով ընդօրինակել[9]: Եւ ոչ միայն զսպասս, այլ և զթիւ եկեղեցեաց աճեցոյց, եթէ արժան իցէ այսպէս ընդունել զբան հեռաւոր պատմչին Կիրակոսի, որ թերևս և յայց ելեալ էր կողմանցս, եթէ, « Շինեաց եկեղեցիս հրաշազան 'ի վանքն որ կոչի » Սկևռա, հուպ 'ի բերդն անուա Լամբրոն »: Իսկ զերրորդ մասն գումարին՝ զ'10,000 ոսկին 'ի սիրելագոյն ևս ծախեաց յիր՝ առատապէս, յաղքատս, իբրև 'ի հարազատագոյնս իւր և Ցիսուսին իւրոյ. և ոչ այնչափ միայն, այլ և որ ինչ յետ այնր անկանէր 'ի ձեռս իւր. և արար սովորութիւն յամենայն չորեքշաբաթի և ուրբաթի աւուրս բաժանել 'ի դրան եկեղեցւոյն Տարսոնի՝ 200 և 300 այլ և 400 աղքատաց՝ հաց և բակլայ, որպէս ծանուցանէն ինքն յ'առ Լևոն թղթին և այլք:*

*Արժա՞ն իցէ յետ այսոցիկ վերադառնալ և ներամտել 'ի խորագոյն ևս խորշս հոգւոյն, 'ի կենդրոն կրակարանի*

1 Ցայսմաւուրք ասեն, « Մեկնեաց և զՔարոզս եկեղեցւոյ և » զԱղօթնսին »:

2 Կանոնն Յարութեանն, Այսօր Յարեաւ. — Նոր կիւրակէին, Նորոգեալ եկեղեցի. — Թոռանց Ս. Գրիգորի, Ով ալյօ:

3 Տաղքն կամ երգք ծանօթք են, ա. 'ի Սիրելին իւր Յովհ. Աւետարանիչ փափաւկ իմաստիւք. — բ. 'ի Հրեշտակապետս. — գ. 'ի Ս. Գէորգ. — դ. 'ի Թաղումն Տեառն, ազնիւ և խորազգած. — ե. Եկեղեցի հակիրճ 'ի Ս. Աստուածածին (Քերովբէից փերոփայն):

4 Զատ 'ի նախայիշեցելոցն՝ որ 'ի Համբարձումն և 'ի Հոգեգալուստն, ծանօթք են 'ի Վերափոխումն Ս. Կուսին, 'ի խորհուրդս Անառակին, և Տնօրէնսն:

5 Ի լուծանել ժողովյն, ըստ աւանդելոյ ուրուք 'ի մերայոցս, « Եկն ոմն իմաստասէր կրօնաւոր առ Ս. Ներսէս, և ասէ. թէ, » աւանձինն ասէր գովութիւն 'ի մետրապօլտացն և 'ի կղերիկոսացն և յիշխանացն, և առհասարակ յամենայն ժողովրդոցն. զի » որ 'ի մարտ մտանէ, թէ և ինքն գիտէ զիւր ըմբշին թափ տալն, » բայց հայեցողքն առաւել ևս տեսանեն. այսպէս և մեք զքո յաղ» թութիւնդ՝ հակառակամարտին: Նոյնպէս և իշխանքն գային և » ասէին զարմացմամբ, թէ Մին մարդ՝ զայսքան մեծ ժողովս յոտին » կացոյց »:

6 Ի մեծի Վատիկանեան գրատան պահի ձեռագիր մատեանն, թիւ 859 յունական գրենոյն, յորում գրեալ 'ի Ներսիսէ բան՝ հաւանօրէն եղև 'ի վերյիշեալ երթն 'ի Կ. Պօլիս, (1197): Տես յէջ 92:

7 « Զայս ծայրաքաղ Օրինագրութիւնքս (գրէ Ներսէս), տառապեալ եպիսկոպոս Տարսոնի, թարգմանեցի 'ի ծերացեալ հելլենացի մատենէ, 'ի թվ. ՈԽԵ (1196), 'ի նորաշէն ամուրն Լուլուայ »:

8 Քանզի գրէ ինքնին յաւարտ օրինացն. « Ներսէս տառապեալ » թարգմանիչ և Օրէնսդրէն զինուորական սահմանադրութեանն, » զգուշացուցանեմ առկաւ զօրս »:

9 Ի թիւ գրոց ընդօրինակելոց վասն Ներսիսի, զատ 'ի նախայիշեցելոցն՝ ճանաչի և հաւաքումն 54 ճառից Ս. Յովհ. Ոսկիբերանի, որ պահի արդ յԷջմիածին, (թիւ 887):

սիրայն, որ համօրէն իսկ և 'ի գործս և 'ի բան և 'ի գիր և 'ի դէմս նորին արտափայլէր հրաշափառապէս: Պատկառեմ ես մխիլ իբրև առ 'ի պէտս ինչ ծանօթութեան՝ յայդ սրբազան ասպարէզ. այլ և անհնարին իսկ վարկանիմ՝ այնքանեաց առաքինաբար ճգնողի, և զմարմին և զամենայն աշխարհի հեթեթանս յանձին իւրում ունայնացուցողի, ոչ փոխակերպիլ որ ըստ օրէ 'ի ճշգրտագոյն պատկեր Աստուծոյ, և հոգիանալ և հրեշտականալ: Որոյ և ապացոյց (եթէ չիցեն շատ ցայսվայր ասացեալքս), այլ ես ոչ սակաւ վկայութիւնք կենսագրացն[1], զորովք զանց արարաք, մեծարանք օտարազգեաց՝ թերևս առաւել քան զհամազգեացն, որք երկրորդ ոմն Պաւղոս Տարսոնացի համարէին տեսանել 'ի քաղաքակիցն նորին 'ի մերս Ներսէս. վկայութիւն խորագէտ Թագաւորին Լևոնի, որ արժանի կաթողիկոսական աթոռոյ դատէր զնա. և իւր ինքեան ակամայ խոստովանութիւն գլխաւորացն, զվարկէն և զհամբաւոյն, 'ի ջատագովական թղթին առ թագաւորն այն, յորժամ ստիպեցաւ լուծանել զամ մի զլռութիւն, զներողութիւն և զաղօթս, զոր պահէրն վասն պակասամիտ յաչաղկոտացն՝ Հռոմկլայեցւոց ոմանց և Սի-




(Տես յէջ 91, Ծանօթ. 6):

նեցւոց, 'ի հեռուստ անտի հալածչաց՝ բամբասանօք և քսութեամբ՝ մինչև յունկն թագաւորին, և հարկաւորէր 'ի խեղամտութիւն սորա նշաւակել՝ ոչ միայն զտգիտութիւն նոցա, այլ և զարբչիռ բարս[2]: Եւ առաւել քան

[1] Թերթաչափ մի վարուց գրիչն՝ որ և թուի մի յականատեսից կամ 'ի մերձաւորաց նորին, զորոյ և զբանս կրկնեմ ուրեք ուրեք՝ կենսագիրն կոչելով, այսպէս կարգէ զխորագիր բանին. «Ներբո- » ղեան և յիշատակ Սուրբ և երիցս երանեալ տիեզերալոյս հօրն » մերոյ սրբոյն Ներսէսի, ամենիմաստ վարդապետի և արհիեպիս- » կոպոսին Տարսոնի»: և գտաւ 'ի Յայսմաւուրս ուրեք. իսկ 'ի սովորական Յայսմաւուրս համառօտ ինչ բանք են վարուցն, ըստ այլոց սրբոց յիշատակի. այլ չափաւորապէս գլխաւորեալ վասն բարուցն, թէ, «էր ինքն խոնարհ և հեզ, անպաճոյճ, ողորմած, անապատա- » սէր, աղօթական, արտասուեղ»: — Գր. Տաթևացի, որոյ տեսութիւնք 'ի բազում ինչ իրս օտարք էին 'ի Սրբոյս, հանգոյն Պարթևին կոչէ և զսա «ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ» 'ի Մեկնութեան Սաղմոսին», յորմէ առնու վկայութիւն ինչ 'ի պէտս իւրումն Քաղուածոյ Մեկնութեան Մատթէի:

[2] Մանր արդեօք թուիցին ոմանց այսպիսի բանք և երգիծանք Լամբրոնացւոյն՝ ընդդէմ Տուտէորդւոյն և Բարսղի եպիսկոպոսի

գայսոսիկ՝ նկատողութիւնք իւր և զմայլմունք 'ի յաւէտ
մաքրականացն և սիրատարփ անձինս, որպէս յաւէտա-
բանիչն Յովհաննէս և 'ի Նարեկացին Գրիգոր, իբրև նը-
ման զնմանիս սիրելով. և ոչ 'ի գործն միայն, այլ և յա-
տացուածս նոցին որոճալով և յայտնաբանելով։ Եւ եւ
առաւել՝ իւր իսկ հոգեբուղխ բանք և խղճք, որոց՝ անդի-
մակաց և վակժայժ կայլակք լի են ցայտեալքն մերձ
ընդ մերձ 'ի գրչէն. և միայն որոյ ուրուք և մեծի սրբոյ
մարթ էր ասել և գրել համարձակ. « Առ քեզ ծարաւիմ,
» (ով Յիսուս), քեզ փափագեմ, քեզ տարփամ. ծարաւիմ
» ըմպել 'ի կրկին վտակաց կողից, որով և արբեալ սիրով
» քով զմայլիմ։ Տարփամ ականարկել զդէմսդ... Նուաղեցաւ
» հոգի իմ 'ի քո անձառդ սիրոյ... Թալկացայ՝ յորժամ
» առ քեզ ականարկեմ... Երբ եկից երևեցայց քեզ ». և
որ ըստ այսմ աւելի ատուածախօսութիւնք. զորս և ըզ-
բազում անգամ կրկնելն հառաչանօք՝ լուեալ Սկևռա-
ցւոյն՝ գրէր. « Յոր աղաղակէր ընդ որս հետևիւրն, երբ
» եկից երևեցայց քեզ », և այլն։ — Ո՜վ հիացմունք համ-
արձակութեանն, մանաւանդ թէ սաստկութեան սրտ-
բէստարաս սիրոյն. որ և ըստ առաքելականն բանի կա-
տարեալ սէրն՝ մերժէ զերկիւղ. և փոխանակ դատաւորի՝
միայն զՓրկիչն և զփեսայն ցուցանէ, և անձկայ և միայ
կոչմանն՝ գալ երևանալ նմա։ Եւ զի՞նչ գործիցէ 'ի յա-
մել փեսային, առ առաւել եւս անձեռուցանել զանձուկ և
զխանդաղատանս հոգւոյն հարսնացելոյ։ — Հաւաչէ, կող-
կոծի և արտասուէ. արտասուէ առէպ, արտասուս հեղու
հանապազ։ Մարգարիտք լուսածինք՝ որոց ոչ գոյ գին.
պարգև՛ զերագոյն շնորհեալ աստուածասիրաց վեհագու-
նից, զոր աշխարհս ոչ իմանայ. այլ հոգետեսից՝ այնքան
մեծ և ազգաւ ծանուցեալ այս շնորհ (արտասուաց), զի համ-
բուն իսկ համանունաբար մառչացուցիչն կոչեցին զայն։
— Հուր է հոգիս 'ի բնէ, որպէս և մարմինս յիւր ըը-
նէն՝ ցուրտ և սառն իմն. 'ի վառիլ և բորբոքիլ սիրոյ հո-
գւոյն՝ հարկ է թէ լուծցէ զծակիցն, հալեցի սառնն, և
բղխեսցեն ջերմաջերմն արտօսր ըղձականք։ Այսպիսիք
էին հանապազահոս վտակք աչաց Ներսիսի Սիրելւոյ.
զոր՝ սիրողագոյնն զնա թերևս անձն՝ աշտատւոր իւր և
աշակերտ Խաչատուր՝ ձեղեղ արցունք, կոչէ, և անտանելի
ձեմ, անցաւնարելի աղբիւր։ « Եւ ո՞ որ յաղբիւրաբար ար-
» տասուացն հասութիւն յաւէր՝ և ոչ վաղվաղակի զատ
» 'ի նմանէ զանկապտելի բարեացն պտուղ կթէր. ո՞ որ
» զգգալի նշանակացն կերպ տեսանէր, և ոչ խոկոյն յի-
» մանալեացն տեսիլ փոխարկէր. զի պատկառանք և շուք
» երևոյթն՝ զաստուածութեանն առաջի կալ յայտնէր.
» և հեզաբար արտասուացն խլուռն՝ զկենարարին չարչա-
» բանս և խաչի իմաստութիւն՝ հայեցողացն վարդապե-
» տէր »[1]։ Եւ որքան վերագոյնս խոյանայր սէրն, այն-
քան յորդագոյնս իջանէին արտասուացն տարափք. մինչև
« սակ յոմանց, թէ սովորութիւն էր կտաւ ինչ 'ի վերայ
» կրծիցն կապել՝ 'ի ժամ աստուածային պատարագին..
» զի երկիցս և երիցս անգամ սարկաւագն քամէր »[2]։
Ո՜վ սխրալի սպունգ սիրոյ։ — Ինքն իսկ արտասուեղն այն
և սիրազեղ՝ երիցս 'ի թղթի անդ որ առ Լևոն՝ վկայէ,
զկայն առաջի Աստուծոյ « միշտ արտասուաց հոսմամբ ».
և թէ, « և եւս լուսաւորեալ 'ի վայելչութիւնն՝ հեղում
» զարտասուս առաջի Աստուծոյ Հօր »։ Քանի՜ սրտառուչ
և զմայլեցուցիչ անկ էր յայնժամ լինել արտաքին հայե-
լւոյ սրտին, երևոյթն սաեմ տեսլեան. և քանի՜ « քաղ-
» ցրահայեցոյն տիպ՝ զսիրոյն հմարտի հպատորութիւնն
» յայտ առնէր »[3]։

Այլ սէր՝ որ այնքան հանգուցիչ է հոգւոյ, նոյնքան և
կոշկոճիչ մարմնոյ առաքինւոյն. և որոյ այսքան սաստիկ
էր եռանդն և բորբոք 'ի հոգւոջ, ոչ էր հնար հաղեղէն
պահարանին ընդերկար ժուժել նմին. այսպիսի զօրով
Ներսիսի Սիրելւոյ՝ անմարթ էր ակն ունել ընդերկարու-
թեան ցանկալի կենացն. և թէպէտ նա այսքանեօք բա-
րեպաշտութեամբք, ըստ վսեմական առացուածոյ Սկևռա-
ցւոյն, որ ըստ օրէ « Եղևէր իբրև զաղբիւր, յառաջէր որ-
» պէս զգետ, ծաւալէր իբրև զծով ». այլ կաշառէր
ընդ հուպ 'ի հուն և յեզր հասանել, և բախնդակ էու-
թեամբն՝ թնդալ թափել խառնել յանպարագիրն ովկիան
աստուածութեան, յոր՝ իբրև զյառաջընթաց վտակս այն-
քան ամս զայսպիսիս հանեցուցանէր անձուկս սրտին։

Այսպիսւոյ վեհագունի կեանս վարողի՝ 'ի դէպ էր և
կատարած ունել վեհաւէտ. որում՝ վաղու իսկ իրազգած
վկայի զօլ, առ 'ի վերուստ յայտնութեամբ. ըստ ոմանց՝
կանխեալ, և ըստ այլոց՝ յետոյ հանգիպեալ համառօտ
ցաւոյն՝ որ սպառաւորապէս եղեւ զկենացն կապանս։ Եւ
որպէս բազում իւիք, եռանդեամբ սրտի, աշխուժիւ հո-
գւոյն, առատութեամբ և զօրութեամբ բանի և գրոյ, և
մեկնաբանութեամբք սրբազան մատենից, մեծողի եր-
կայնմտութեամբ և ներողութեամբ նախատչացն և յա-
չաղկոտաց, նմանեալ եղև Ներսէս՝ Յովհաննու Ոսկեբե-
րանի, նմանօրինակ իմն և կատարեաց՝ քան թէ կրեաց
զմահուն օրէնս. « Ննջէր, ասէ կենսագիրն, անբերելի
» խնդութեամբ. և զգեստաւորեալ խորհրդական զգես-
» տիւ՝ մատուցանէր զփրկագործ պատարագն. և հաղոր-
» դեալ 'ի կենարար և 'ի մեղաքաւիչ խորհրդոյն՝ յորմէ
» ոչ երբէք 'ի բաց եկաց, յետ այսօրիկ յառաջ կոչէր
» զեղբարսն, և զկիրճն խօսէր զբանս. առկաւուք երկրոր-

Աճւոյ և նմանեացն. այլ յուշ նոցին և նախատչաց մերոյս Սրբոյ,
Կենարարին Յիսուսի քաղցրութիւն. որ ամենայնի համբերեաց և
հեզաբանեաց. այլ ոչ և կեղծաւորացն և նախանձու կերպարանօք
զպարզամիտս խաբողաց, զառնազգեստիցն զայլոց, և աճազին վա-
յիւք զատափետեաց. և զոր գեհենական սպառնալեօք արգելեալ
էր՝ զասելն յիմար և ռակայ, նովիմբ մօրոս և կոյրս զնոսա կըն-
քեաց։ Շատ իսկ ծանօթ է մեզ, և ծանուցի և եւս, սրբութիւն և
հեզութիւն Ներսիսի. այլ ոչ ըստ բաւականին՝ լրութիւն հակա-
ռակողացն. յորոց զմիոյն (Տուտէորդւոյ) չափ՝ փոքր մի եւս յայտնա-
բանեալ էր յառաջագոյն՝ կաթողիկոսն Գրիգոր Տղայ, 'ի թղթին
առ Հաղբատացիս. և պարզագոյն եւս յետոյ Կիրակոս Պատմիչ՝ ըզ-
յանդուգն ձեռներէցութիւն նորա և զպնդապլխութիւն, վասն որոյ
փախստեամբ միայն կարաց զերծանել 'ի պատուհասէ Սպասալարին
Զաքարիայ։ իսկ « Անեցոյն պատուղն՝ յայտնի է », ասէր Լամբրոնա-
ցին. և թուի զատ 'ի ռամիկ բարուցն՝ որով թուրքաց կիթղայընկեր
լինէր, թեկնածութիւնն կաթողիկոսական աթոռոյ, որպէս համա-
նուն իւր երբեմն եպիսկոպոս նոյն քաղաքին Անւոյ։ Որքան ամօ-
թալի սոցա գործք և բանք ընդդէմ Լամբրոնացւոյս, այնքան և
յաճախիչք փառաց նորին, մանաւանդ թէ կատարումն. զի առանց
հալածանաց և վշտաց՝ թուի թերի իմն ոչ փոքր 'ի կեանս սրբոց և
քրիստոսասէր անձանց։

1 Գրիգոր Սկևռացի։

2 Կենսագիրն վերոյիշեալ, յէջ 92, ծանօթ. 1։

3 Նոյն Գրիգոր Սկևռացի։

» դէր զխրատականսն՝ սիրելի որդւոցն. աւանդէր անփոխադրելի մնալ 'ի նոյն։... Եւ (մինչդեռ) որք մերձաւորքն էին՝ իբրեւ լուան զհրաժարական բանսն, ողբս առեալ կոծէին զանձինս մորմոքելի սգով՝ զբաժանիլն 'ի նմանէ, ինքն 'ի վեր զակն կարկառեալ՝ յորմէ ոչ երբէք խոնարհեցոյց... զուարճ դիմօք և արտասուալից խնդութեամբ ասէ. Ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ։ Եւ իսկոյն փչեաց զմաքրական հոգին 'ի ձեռս Աստուծոյ՝ որում անձկացեալն էր »։.. — Եւ մեր արդեօք ամբարձեալ ժամանեցուցին զնա յարակիրթ հոլաթեւք հոգւոյն։ — Համարձակիցիմ ընդ հոգերգողին մերոյ՝ որ զՈսկիբերանն ներբողեաց 'ի չարականի, զնորին համագոյգն վարուք՝ նմին և համադասել 'ի հանգստեանն, « Ցանճառելին մերձեալ 'ի լոյս՝ հուպ Երրորդութեանն ». այն՝ որ, ըստ մերձաւոր կենսագրին, « հանապազ ընդ Քրիստոս ունէր նպատակ և նախագաղափար ». և զոր, ըստ միւսոյ կենակցի, « Քաջարուեստ կազմիչն ամենից՝ հայելի եդ զնա 'ի միջի »։ Չիցէ՞ ճահ աստանօր ընդ միւսոյ եւս ձեռնասուն նորին գրչի և համանուան քեռորդւոյ, բացագոչել իրաւամբ. « Ո՛վ հոգւոյն զօրութեան, որ շնչէ ուր կամի, առանց չափոյ՝ իւրոցն զիւրսն տալով »։ — Այն սա համբակ քահանայ Ներսէս, արժանապէս կրող անուան և ոգւոյ քեռւոյն, որոյ փոխանակ այնուհետեւ աշակերտեցաւ Գրիգորի Սկեւռացւոյ, և սա՝ որ նորին թախանձանօք գրեաց զներբողեան Սրբոյն, վկայեն միաբան, զի ոչ յապաղեցին զգաստքն տօնել « զփառաւոր օր յիշատակի վերափոխման » նորա, որ էր օր 14 յուլիսի, 1198 ամի. և սա միայն 'ի համակարգն՝ նշանակի ընդ թագազարմիցն կատարածս՝ յարքունական Յայսմաւուրս. « Յայսմ աւուր հանգեաւ 'ի Քրիստոս՝ Տէր Ներսէս Լամբրոնեցին, սուրբ հայրն, արքեպիսկոպոսն ». և 'ի յիշատակս վաթսնիւ չափ հանգուցելոց բարեպաշտից՝ սմա միայն ընծայեալ է Սուրբն մակդիր։ — Ականատեսիցն այնոցիկ և ականջալուր եղելոց այնքան աննախանձ և երկիւղած անձանց՝ միակ և մեծ մխիթարութիւն և ուրախութիւն լինէր նոյն ինքն սրբութեանն յիշատակ և տօն, որոյ՝ և առ կենօքն՝ զատ յայլոց նշանակաց՝ երեւեալ էր 'ի նմանէ և « զօրութեանց հրաշք,... այսոցն հալածումն և ախտից բժշկումն », ըստ վկայութեան ժամանակակից կենսագրին և Սկեւռացւոյն. ընդ որ և մեզ յաւէտ խրախանալ է արժան, և տալ փառս փառաւորչաց նորուն և փառաւորեցելոյն առ 'ի նմանէ ամենափառ Աստուածութեանն։

Այլ հարկ է թէ ոչ այսպէս անխառն նկատիւր ուրախութիւն ներկայիցն՝ յայնքանոյ հեղինակէ և հայրապետէ անջատելոց և որբացելոց։ Եւ ո՞ կարասցէ երկբայել ընդ ողորմագին սուգ մերձաւորաց նորին, ազգակցացն և աշակերտաց, ընդ որս թերեւս և ծնողին իւրոյ՝ մօր Շահանդխտոյ, որոյ կենդանութիւն վկայի և ութ ամաւ յառաջ քան զփոխումն որդւոյն, այլ յետ այնր լռէ պատմութիւնն. բայց ցաւալի կամ զարմանալի իմն է մեզ, զի գովաբանքն իսկ յոյժ համառօտ բանիւ աւանդեն, մանաւանդ թէ լռեն զյիշատակ և զօրինակ թաղմանն և յետոյն հանգստեան. միայն Սկեւռացին այսչափ ինչ ունի. « Զօրինաւոր (զայն) գործ վճարէին, սաղմոսիւք և քահանայական օրհնութեամբ 'ի հանգիստ յուղարկէին. զԵրրորդութեանն անձկանօք մաքրութեամբ տաճարացեալն՝ 'ի տաճարին Տեառն մեծափառ պատուով 'ի դամբարանի դնէին. զՍուրբն՝ 'ի սրբարան սրբոց հանգուցանէին. և զյիշատակն ամ յամէ յեօթներորդում ամսեանն (յուլիս) ըստ հռոմէականին՝ 'ի ԺԴ օրն աւանդէին »։ Ծանուցանէ քեռորդի Սրբոյն, զի տաճարն այն հանգստեան էր 'ի Սկեւռայն. բայց թերեւս մասն ինչ 'ի սրբանեալ մարմնոյն՝ տուաւ և 'ի տաճարն Տարսոնի. զի այսպէս առնէին երեւելի և սիրելի արանց և յերկուս տեղիս բնակելոց, որպէս և Լեւոնի թագաւորի։ — Ո՞ յառաջնումն անդ աւուր հանգստեանն կամ յիշատակի՝ ընդ դամբանականն արտասանեաց ներբողեան, ոչ գիտեմ. այլ անշուշտ 'ի նոյն իսկ աւուրս սգոյն՝ ողբաց Խաչատուր սպասաւոր նորին և աշակերտ՝ զՈղբս չափաբանական բանիւ, ռամիկ բարբառով. այլ կարի խորազգած և սրտաշարժ, մանաւանդ սկզբնաւոր բացագանչութեամբն և վերջարան տողիւն. որ և միակ և աննմանակ բանահիւսութիւն է յայնմ տեսակի՝ 'ի դպրութեան մերում. և զոր ոչ երկբայիմ ախորժարար և մտադիւր, այլ և կարեկցաբար ընդ մորմոքեցուցիչ բանսն՝ ընթեռնուլ ամենեցուն՝ որոց ցանկալի իցէ Սիրելին Ներսէս Լամբրոնացի. և հնա՞ր իցէ չլինել այնմ որ ունիցի միտս և սիրտ։

## Ողբք 'ի Տէր Ներսէս Արհին Տարսոնի.

*Ասացեալ Խաչատուր պաշտօնէի նորուն աշակերտի.*

Ա՛մ. զահ թողում, զամօթ մոռանամ,
Զիմ լուսեղէն Տէրըն մեծարեմ.
Զիր սընընդեան պարտքըն վըճարեմ,
Ածեմ զուշովս ու դառնամ 'ի միտ։
Երբ զիմ ճրակ Տէրըն յիշեցի՝
Լոյսըս զընաց, ուժըս պակասեաց,
Խելքս ու հոգիս իմ զումարեցաւ։
Յիշեմ զիմ տէրն 'ի Շիքիրոնին [1].
Յիշեմ զիմ տէրն 'ի Նարեկացին,
Յիշեմ զիմ տէրն առջև կանթեղին.
Յիշեմ զիմ տէրն 'ի յեկեղեցին,
Յիշեմ զիմ տէրն 'ի տունն 'ի զգեստին.
Յիշեմ զիմ տէրն 'ի բազմախաչին [2],
Յիշեմ զիմ տէրն առջև խորանին.
Յիշեմ զիմ տէրն 'ի պատարագին։
Ա՛ռ ձեզ խօսիմ, հի՛ն կըտակարանք,
Եկէք որ լանք, զի անպիտացայ։
Ե՛կ Սողոմոն, զի անպիտացար.
Ե՛կ Դանիէլ, որ խոպանեցար.
Ե՛կ Արարածք, լա՛ց, որ փակեցար.
Ա՛ր՝ ե՛կ Դաւիթ, որ անպարտեցար։
Առնում լալով վայիս ձայնակից
ԸզՅովհաննէս Որդին Որոտման.

1 Փափագեմ ուսանել զիմաստ բառիս՝ զոր ոչ կարացի հաւատել։

2 Այսինքն է եպիսկոպոսական նափորտն կամ շուրջառ։

Ե՛կ, ժողովէ զՏեսիլն ու պահէ,
Ցի այլ չըկայ տէրըն որ մեկնէ.
Բայց լա՛ց ու վա՛յ տուր ինձ գերելոյս,
Զի քո Նըման՝ տէր եմ կորուսել։
Դառըն տեսար դու զՏէրն 'ի խաչին.
Ես դառն տեսայ զիմ տէրն 'ի տախտին[1].
Դառըն լըւար դու ըզծարաւին,
Եւ դառն լուայ ես զօրն աղմըկին։
Լացո՛ղք Թըղթոց կաթողիկէից,
Եկէք ու լի՛ք վայիս ձայնակից.
Զունինք այլ տէր՝ որ հակըցընէ[2],
Ու ոչ այլ գրող որ Նոր Նորոգէ։
Ե՛կ Առաքեալըդ Տարօնեցի
Ու ա՛ռ ամփոփէ զբանքս որ լսեցի։
Ե՛կ Աթանաս, լալոյս ձայնակից,
Բանբերըս քո են Պատարագի.
Բայց իմ հսկող տէրըն չերևի.
Ոչ մեկնըւի ու ոչ բացայայտի.
Ոչ այլ պայծառ Քարոզն ասուի,
Ոչ այլ Նըման քեզ տէր գըտանի։
Ոչ 'ի քո բանք այլ ոք տոչորի.
Ոչ այլ հսկող Թևք քո տարածի.
Ոչ այն անքուն ակըն բոլորի.
Ոչ այլ հեղեղ արցունքն իջանի.
Անտանելի հեծն այլ չըլըսւի՛։
Զայնեմ վանիցն՝ որ հովիւ չունի,
Կարօտ եղև արթուն հովըւի.
Ու Աստուա՛ծ, ու զայս բանս այլ գըրեցի,
Որ ով լինի՝ զերթ զի՛նք չըլինի։
Իմ տէրն արթուն էր յամեն տեղի,
Կիրթ էր ու վարժ ամեն իմաստի.
Կենաքըն սուրբ էր ու ոչ քուպիտի.
Վարուքն ամբիծ Նըման Մովսէսի.
Արտիւն ողորմ Նըման Պաւղոսի.
Աղքատասէր Նըման Յիսուսի։
Ներսէս՝ պըսակ էր յեկեղեցի,
Զարթուցանէր զամենն 'ի բարի.
Ներսէս՝ ոչ առ ծուլիցն 'ի տեղի.
Հեզ և հանդարտ արթնոցն 'ի բարի։
Ներսէս՝ արթուն էր դէմ գիշերի,
Հանէր 'ի գլուխ ըզցայգն 'ի կարգի.
Հետ սահմանէր ըզկարգն 'ի տեղի,
Հետ խոկալով գըրէր գրուի.
Երբ առաւօտ լինէր ցորեկի՝
Սկիզբն դնէր Նա պատարագի։
Ներսէս՝ ցասումն էր ընդդէմ ախտից,
Զոր խորհըրդոց չունէր Նա տեղի.
Բայց զըւարթուն էր 'ի պատարագի,
Հեշտ և կամակ եղբարցն ամենի։
Ներսէս՝ աղբեր անցամաքելի
Ունէր 'ի գլուխն 'ի յիւր գովելի.
Հետ տոչորէր յաղագս ամենի,
Հետ արտասուէր 'ի պատարագի։
Ներսէս՝ վստահ էր 'ի տէրն Յիսուսի,
Մեղաւորաց տայր զեկեղեցի.
Յիշէր ըզբանըն մեծ տէրունի,
Թէ՝ Ես եկի վանց մեղաւորի։
Ներսէս՝ այրեաց էր խնամածու
Որբոցըն հետ անդի խօսելու.
Ունևորացն օրինակ բարւոյ,
Զունևորացն էր տուն կենալոյ։
Աւա՜ղ մըտացն՝ որ գաղարեցաւ.
Աւա՜ղ գըրչին՝ որ խոպանացաւ.
Աւա՜ղ բանին՝ որ պակասեցաւ.
Աւա՜ղ տեսիցն՝ որ Թառամեցաւ.
Աւա՜ղ բարին՝ որ աւաղեցաւ.
Աւա՜ղ գերեացս՝ որ որբ մընացաք։
Դու, Տէր, գըտար որում ցանկացար.
Դու, Տէր, հասար ում կարօտացար.
Դու, Տէր, առեր որ վաստակեցեր.
Դու, Տէր, տեսար որում ջանացար.
Դու, Տէր, տուար ում անուանեցար.
Դու, Տէր, հանգեար՝ զի աշխատեցար։
Ես աղաչեմ զիմ Տէրըդ բարի,
Զեռասընաւնդ ծառայս քո գերի,
Որ զայս լալոյ բանըս գըրեցի.
Գիտեմ որ մերձ կաս այժմ Յիսուսի,
Ծունըր կրկնեա վասն իմ ցանկալի.
Տուր աղաչանս ինձ աղերսալի,
Դառնալ 'ի հող. ինձ կեանք չըպիտի՛»։

---

27. Յետ հատուցանելոյ առ Լամբրունային՝ զդուզնաքեայ Դրուագս երախտեաց, դարձցուք յետին ևս մի Նուագ՝ կառուցանել զակն 'ի մնացուածս ծննդական Նորուն դղեկի. զոր յառաջ քան զնոր քննութիւնս Լանկլուայ և այլոց, դարք երեք և կէս 'ի սպառ պարզեալ էին, և ոչ գիտեմ որպիսի ինչ անցք անցին ընդ Նա՝ 'ի կիսոյ ԺԴ դարու ցելս ԺԷին. բայց զի կամ վասն աճացին դըրից և ստուարակարկատ ամրութեանցն, և կամ վասն աւանդական ինչ դիպաց, կամ թէ հաճոյագոյն ևս իցէ կարծել՝ աղօտ յիշատակաւ Նախնի տեարց տեղւոյն քաջաց, և մեծամեծ գործոց վսեմականին Ներսիսի, Հսկայից բերդ անուանէր յայլազգեաց, որպէս և ցարդ անուանի։ Ի սկիզբն ԺԸ դարու, յամի 1706, յամսեան յանուարի, բազմաշրջիկ փռանկ ուղևորն և տեղագիր Պօղ Լուկաս (Paul Lucas) եկեալ 'ի Տարսոն, դիտէր 'ի դաշտէն՝ մեծաւ սքանչացմամբ՝ զբերդս զայս, – զոր երեք փարսախ միայն հեռի ասէ 'ի քաղաքէն, անշուշտ օգաշափութեամբ, –'ի միջոց հովտին վերամբարձեալ 'ի քարակտուր լերին ամենուստ սեպացելոյ, և զդրունս երկաբիս. 'ի կողմանէ մտից մեծի դրանն՝ 'ի ստորոտն՝ երեք

1 Թուի բազմոցն՝ յորում վախճանեալ իցէ Տէր Ներսէս։

2 Թուի հանդերձէ, թէ ոչ հանդերձել՝ իբրեւ զարդարել։

աստիճանաձև պատուարք կամ կարկառք էին, մէն 30 կամ 40 ոտք 'ի բարձրութիւն. ըստ պատշաճի վերելից և վայրիջից հսկայիցն երկայնաբարձից. (անշուշտ կատակաբանէ). այլ ստոյգ այս ինչ է՝ զոր իմովք իսկ աչօք տեսի, ասէ, զի դրունքն (երեքին) բարձրաբերձք էին աւելի քան հարիւր ոտնաչափ. որովք է իմանալ զկամարսն՝ յորոց միջի դրունքն. իսկ որ 'ի վերայ լերինն շինուածք՝ ամենևին մեծագործք և հրաշակերտք. և ցաւէր նմա յոյժ զի ոչ կարաց մօտագոյնս ևս մատչել քննել զնոսին. այլ որչափ ինչ ետեսն՝ հաւասար համարեցաւ հրաշափառագոյն շինուածոց նախնեաց։ Երևէին և աշտարակք ոմանք, ոչ միայն քան զայլ շինուածսն բարձունք, այլ և քան զամենայն զոր երբէք տեսեալ էր նորա. և 'ի հաւաստիս բանիցն՝ եթող զուրուագիծ պատկերս այս [1]։

Ոչ հեռի 'ի շինուածոց Լամբրոնի՝ մեծագոյն ևս աշտարակ մի քառակուսի, կամ աշտարականաձև շինուած ամուր՝ ետես յետին այցելու վայրացս, Հ. Սիպիլեան, Սիսայ գաւառի կոչեցեալ, իբրու դղեակ իմն առանձնակ. որոյ վերին մասն 'ի մատուռն յարդարեալ էր, ստորինն 'ի տեղի ապաստանի։ Ոչ կարեմ գուշակել որպիսի ինչ էր 'ի հնումն, կամ որպէս կոչէր. այլ յայտ է թէ համարեալ էր 'ի նահանգին Լամբրոնի։ — Որոյ միւս ևս մերձաւոր տեղի ընդ մէջ բերդին՝ յարևելից կուսէ և 'ի հիւսիսոյ Արմենի լերին յիշեցելոյ 'ի վեր անդր՝ էր Յովանի Ագարակն. ուր յամի 1233 Յակոբ ոմն կրօնաւոր գրէր աւետարան մի՝ վասն Կարապետի քահանայի գաղթելոյ 'ի Միջագետաց։ Յայտ է թէ էր անդ և կրօնաւորանոց առանձնակեցից, զի կոչի և Լաւրան և Անապատ, մերթ



19. Դրունք Դղեկին Լամբրոնի.

յանուն Յովանիսի, մերթ յանուն Արմենի լերին։ Զոր օրինակ, յամի 1290 ճարտար գրիչն Ստեփանոս Գոյն Երիցանց՝ [2] ընդօրինակելով անդ աւետարան մի, գրէր «'ի » լաւրանում խցկան՝ 'ի հիւսիսակողմն Թիկունս լերին » որ կոչի Արմէն... յազնիւ և յամէնընտիր աւրինակէ, » տի նա և յարուեստ բանի ոչ յաննշան գրչէ », և այլն։ Այլ ոմն միայնաւոր սակաւ ամաք զկնի (1298), գրէ. «Ես » տրուպս Գորգ, որ 'ի Թիկունս լերինս Արմենի նստիմ, » յԱնապատս Յովանիսի, պատահեցայ աւրինակի գրոցս » Յովհաննու Աւձնեցւոյն՝ յարկեղս մեծ վանացն Սկեւռայի, և խոշոր գրով փոխեցի... 'ի զգաստութիւն ինձ » և համաշունչ յարկակցի եղբաւր Խաչատրոյ վարդապետի և Աստուածատրոյ, և զկնի մեր որոց Տէր յաջողեսցէ »։ Ի նմին ամի և Վահրամ Սարկաւագ ընդօրինակէ զգիրս Փիլոնի Եբրայեցւոյ, ասելով. « Ինքնագիր » երկաք 'ի ծոյն սնուցչի իմոյ աստուածարնակ տաճարին » Աստուածածնի և Ս. Փրկչի, յԱնապատիս Արմէնի. և.. » հազիւ հազ տագնապաւ իմն հասի յաւարտ (վասն տկարութեան գլխոյ)... և վասն ժամանակիս անհանդարժելի վրդովմանցս և խուճապ տագնապիս՝ որ եհաս » 'ի վերայ մեր յազգէն Իսմայէլացւոց », և այլն. և մաղթէ, « յիշման արժանաւորել զհոգևոր հայրն իմ և զուսուցիչ, որ իբրև զհուր մաքրէ զիմ զմարմնական ախորժակս, յաստուածայինսն յորդորելով հանապազ աննախանձաբար, զՍտեփաննոս Գոյնէր Երիցանց, (վերոյգրեալն)... Եւս և զկոկող քարտուղար զՊետրոս կրօնաւոր և զկոստանդին սարկաւագ՝ աղաչեմ յիշել, որ » աշխատեցան 'ի սա »։ — Ստեփաննոս այս երիցս յիշեալ յանապատիս Արմենի, յիշի և յայլ նուագս 'ի սահմանս սորին՝ 'ի Սկեւռա, և այլուր, և հայրենեաքն կոչի

1 Il y a de la ville (Nemrod) en bas trois grands degréz, du côté où l'on voit la porte ; ils sont 30 à 40 pieds de haut chacun, et sont faits sans doute à proportion des jambes de ceux qui les montaient : c'était par là que les Géans descendoient dans la plaine. Ce qu'il y a de certain, c'est que les portes que j'ai vues de mes propres yeux, ont plus de cent pieds de haut chacune ; et que les bâtimens que l'on remarque sur la montagne, sont d'une grandeur absolument prodigieuse... Ces monuments sont des plus merveilleux de l'antiquité. L'on voit dans ce qui parait être la ville, des Tours qui surpassent encore infiniment les autres édifices par leur hauteur : jamais je n'en avais vu de si élevées. — PAUL LUCAS. *Voyage*, T. I, 275.

2 Այն որ յիշեցաւ կանխաւ (յէջ 85) և յիշեսցի ևս 'ի մօտոյ։

Կայծառօնցի, և ըստ այլոց գրութեան Կայծառօնցի,
տեղի անծանօթ, որպէս և պատճառ մականուանն Գոյ-
ներ կամ Գոյներ, երբեմն լոկ Գոյն, յարադրութեամբ Ե-
րիցանց, որով յայտնի երիցու զարմ լինել. և համարիմ
զնոյն Ստեփաննոս խրիցու որդի, որ յամի 1274 ընդօրի-
նակէր զգրուածս ինչ Վարդանայ մեծի վարդապետի և
զայլս՝ 'ի սակս Կեռան թագուհւոյ։ Նոյն դարձեալ յա-
մի 1285 'ի սոյն սահմանս գոլով՝ սատար եղև 'ի նիւթ
գրչութեան Աստուածաշունչ գրոց, և յետոյ (1288) ինք-
նին խոկ ձեռն ածեալ աւարտէր զգրչութիւնն, «փցուն
» գրիչ» զինքն կոչելով, խսկ ստացողքն՝ «պատուական
» քահանայ» կոչեն։ Հուսկ յիշատակ Նորին (1310-12),
նշանակեցաւ յառաջագոյն (յէջ 85), գրչութիւն մատենից
որոց 'ի Կիպրոս կղզւոջ, վասն Ալիծայ դստեր Հեթմոյ
Լամբրոնացւոյ։ Ի խնդրոյ սորին Ստեփաննոսի՝ քաջ
գրագէտն Գէորգ վարդապետ Սկեւացի (ընդ հուպ յի-
շելի), յերկուց կամ ընդարձակեաց զՍրբեան գրչու-
թեանն Արիստակէսյ։ Մերձաւորն սմին յիշի ազնուա-
կան ոմն ասպետ Սիր Գոյներ, յամի 1271, թերևս ազ-
գակից կամ հարազատ Ստեփաննոսի։ — Ի վերոյգրեալ
յիշատակարանի Վահրամայ սարկաւագի՝ նկատելի են
երկոքին եկեղեցիք կամ տաճարք տեղւոյս, Ս. Աստուա-
ծածին և Ս. Փրկիչ. այլ ոչ կարեմ հաւաստել թէ զո՞ր
և որիչ յայսմ Արմենի Անապատիս կամ յԱգարակիս
Ցոլանի լիցեն, եթէ նոյնք որ 'ի Սկեւոյն, յոր և մատ-
չիմք աստ տեղագրութեամբս։

28. Որ ինչ էր Մլիճ 'ի համար Պապեռոնի՝ նոյն և
Սկեւռայ վանքն Լամբրոնի. այսինքն է դամբանա-
րան տերանց մեծին այնր աւանի, այլ և գլխաւոր տեղի
աղօթից կամ եկեղեցեաց նահանգին. որոյ սկիզբն և
հիմնարկու անծանօթ, այլ թուի զուգաժամանակ բեր-
դին և պայծառութեան նորին, 'ի հաստատել անդ Օշնի
առաջնոյ զբնակութիւն իւր. թերևս 'ի Ցունաց իսկ հիմն-
արկեալ և 'ի նոցանէ առեալ զանունն, եթէ նշանակիցէ
ինչ։ Որքան ծանօթ է արդ Լամբրուն, այնքան՝ անծանօթ
մնայ մենաստանն, 'ի վկայութենէ նախնեաց ծանուցեալ՝
գոլ «առընթեր բերդին». որպէս և երկիցս ասէ Սա-
մուէլ, և «առընթեր հայրենատուր ամրոցի տերանց մե-
» րոց՝ Լամբրոնի». և ըստ վերոյգրելոցդ՝ երևի առ Ագա-
րակի անդ Ցոլանի լինել, որ է ասել ըստ Հռ. Եւ. բեր-
դին։ Այլ կրկին էին մենաստանքն. մին՝ բուն Վանքն,
և միւս՝ Անապատն. յառաջնումն էր Ս. Աստուածածին
եկեղեցին մեծ, զոր և ասեն շինեալ Բ Օշնի, հօրն Ս.
Ներսիսի, և կարգեալ զնա առաջնորդ տեղւոյն. բայց
կամ յառաջ քան զպայազատութիւն իշխանութեանն
շինեալ էր զայն Օշնի, և կամ զհօրն և զհաւուն շինած՝
նորոգեալ և վայելչացուցեալ. քանզի և մինչ ստնդիայ
էր որդին իւր Սմբատ-Ներսէս, յամի 1153 կամ 1154, և
«պատահեաց ախտ ցաւոց, բերաւ 'ի հաւատարիմ ծնո-
» ղացն և ընծայեցաւ ամենօրհնեալ և միշտ փառաւո-
» րեալ Աստուածածնին, 'ի տաճար անուան իւրոյ՝ որ 'ի
» վանքս Սկեւռայ... (ուր և սա) սնեալ 'ի գեւարքոյս
» հասակէն՝ վարժէր յուսումն դպրութեան, ըստ յօժա-
» րութեան ծնողացն, ընդ այլ եղբարս»։ Աստ էր Սուրբն
քանամենի՝ յորժամ (1173) Գրիգոր ոմն եկեալ 'ի Հռոմ-
կլայէ՝ յընդօրինակութիւն աւետարանի՝ վասն Կոստան-
դեայ քահանայի սպասաւորի Ս. Շնորհալւոյն, ասէ. զըն-
տիր օրինակն «Շնորհեաց Ներսէս սուրբ և ընտրեալ
» քահանայն, որդի մեծազօր Սեւաստոսի Պատրոն Աշնի.
» որ ամենեւին հանգիստ եղև գրչիս տկարութեան՝ յիւր
» սեփհական Անապատն Սկեւռայ անուն կոչեցեալ, որ է
» մերձ յանառ դղեակն Լամբրուն»։ Յետ հօրն՝ և Հե-
թում Սեբաստոս անդրանիկ եղբայր Սրբոյն՝ առ ժա-
մանակս ձեռնադրութեան սորա յեպիսկոպոսութիւն
(1175), «ամենապատիւ վայելչութեամբ շինեալ էր զտա-
» ճար աղօթից 'ի սուրբ ուխտս (Սկեւռայ), և նկարա-
» գրութեամբ պատկերաց զարդարեալ. ընկալեալ զեկեալ
» յոնապատէ փեսայս (զՆերսէս), գեղեցկացեալ աս-
» տուածային հանճարովն՝ որպէս լուսին, և պայծառա-
» ցեալ գիտութեամբ՝ որպէս զարեգակն, և հիացուցա-
» նող վարուք, կացուցին յաջմէ սորա զգլխոյ սուրբ տա-
» ճարիս, զարդարեալ և պաճուճեալ. և բազմեալ 'ի քա-
» հանայական աթոռն, 'ի տօնի Խոկուհւոյն՝ ետ զխաղա-
» ղութիւն ժողովոյս. և յարուցեալ կատարեաց զըքանչելի
» խորհուրդ սրբոյ պատարագին, յիշատակ փրկագործու-
» թեան Քրիստոսի և քաւութիւն ժողովրդեանս. որոյ
» հաղորդեալ՝ տեսութեամբ և ճաշակմամբ, ուրախու-
» թեամբ մեծաւ մատուցաք փառս Աստուծոյ։ Եւ յայնմ-
» հետէ բուռն հարեալ 'ի վշտակցութիւն ժողովոյս՝ բա-
» րեկարգութեամբ տնօրինէր 'ի հօրէն իւրմէ աւանդեալ
» սուրբ ուխտիս»[1]։ Յայնմ մեծահանդէս աւուր՝ յորում
զառաջինն քաղցրաբարբառ շրթամբքն զխաղաղութիւնն
նուագեաց, նոյնիմբ 'ի դէպ էր համարել արտասանեալ և
զանուշակ «Ներբողեանն 'ի Վերափոխումն ամենօրհնեալ
Աստուածածնին, (որպէս վերագրի ճառն՝ յաւելուածովս)
» ասացեալ 'ի Ներսիսէ, ծնողաց խոստմամբ նմին ըն-
» ծայեալ ծառայէ». և սկսանի «Պարտական զատիմ
» կուսական աւուրս տօնի՝ ընծայել զպտուղս բանի, իբր
» զտնկեալ 'ի նմանէ որթ՝ 'ի մէջ բուրաւոր ատեղանց՝
» յաստուածատունկ սուրբ սյս տաճարի». այլ որպէս
այլուր յիշեցաք՝ հաւանօրէն 'ի քահանայութեանն աստ-
ցեալ է նորա զայն ներբողս։ Իսկ տաճարն յիշեալ՝ նոյն
թուի նուիրեալն առ Տիրամայրն. բայց զի շինեալ 'ի Հե-
թմոյ ասէ ժամանակակիցն, կամ այլ տաճար էր յանուն
Նորին Խոկուհւոյ, և կամ կից նմին և մերձ՝ մի յեկեղե-
ցեաց ծանօթից 'ի յիշատակարանս, Ս. Փրկիչ, և Ս. Նշան
անուամբք։

Առաջինն՝ որ և Ամենափրկիչ, յիշատակի առ երկու-
քումբք հարազատովքն, որք և ետուն գրել «'ի պատիւ
» և 'ի փառս սուրբ եկեղեցւոյս Ամենափրկչիս՝ զայս աս-
» տուածարան մատեանս (Աւետարանաց) 'ի վանքս Սկե-
» ռայ», յամի 1193. զոր և յիշեցաք յաւարտ տեղագրին
Լամբրոնի. և որոյ նկարիչն ասէ վասն երկոցուն եղ-
բարցն. «Զարդարեալ պայծառացուցանեն զայս աս-
» տուածաշէն միաբանութիւնս, հանգստարան եղբարց
» իւրեանց. յորոյ լրումն փառաւորութեան՝ հրամեան ե-

[1] Այս բանք են Սամուէլի Սկեւռացւոյ՝ 'ի բազում անգամ վկայեալ յիշատակարանի անդ Մեկնութեանն Սաղմոսաց։

» տուն ինձ Կոստանդեայ՝ հոգեւոր երկամբք ծնեալ որ-
» դւոյ, աստարութեամբ գրչի՝ աւարտել, և երանգօք
» ծաղկոց զարդարել...։ Արդ աղաչեմ... զրանիցս Ա-
» տուծոյ զարդարող՝ սիրով և հաւատովք, որակուրեամբ
» ճիւրոյս, զՏէրս իմ Ներսէս, և զիշխողս զԹաթուլ Հե-
» թում, անմոռաց պահեցէք 'ի կարգ յիշատակացն որ
» 'ի սուրբ պատարագն»։ Ոչ կարէ լսել քաջարուեստ
գրիչն և նկարիչ՝ զարժանաւոր իւր վաստակ. «Եւ զնուաս-
» տութեանս իմոյ ապաստուորութիւն աստուածային մա-
» տենիս՝ աստուածապարգև արձեստիւս՝ յիշատակի ար-
» ժանի արարէք»։ Մաղթէ և վասն ուրումն վարդանայ։
— Յետ հնգից ամաց (1198) սոյն «յօթնվան հաչակաւոր
» ուխտի Սկեւռայ, առաջի սրբոյ Աքանչելագործ նշանի և
» փրկչին տաճարի», եղև գրչութիւն համաքստակ և
թերևս գեղապաճոյճ ևս աւետարանի՝ Պապեռօնի, յայլ-
մէ գրչէ. յորմէ և յայտ լինի՝ զի ընդ գպրութեանց և յա-
րուեստ գրչութեան և նկարազարդութեան խնամով մար-
զէին 'ի վանորայքդ։ — Եւ զի ոչ միայն իշխանազանց
տերանց Լամբրոնի էին անդ հանգստարանք՝ այլ և վա-
նականացն, յայտնէ դարձեալ ծերունին Սամուէլ, փա-
փագելով ձեռօք սիրեցելոյն իւրոյ գլխապետի Ներսէսի
ամփոփիլ ընդ նովին. «Եւ զիմ աղքատութիւնս, ասէ,
» զնիլ սորին օրհնութեամբ՝ 'ի դամբարան հանգստեան,
» ընդ սրբոց խնոց հարցն. որ այժմ հուպ եմ սոցին՝ ծե-
» րութեան ալեօք կոծեալ...։ Յօղ աղօթից ձերոց կա-
» թեսցէ 'ի հոգի մերոյն հանգստեան, և բեղմնաւորեալ
» սնուսցէ զթաղեալքս յարգանդ երկրի՝ զարնայնոյ յա-
» րութեանն, պայծառանալ նորոգմամբ ընդ առաջ Քրիս-
» տոսի»։ Յիշէ սա յանուանէ և զսակաւս ոմանս յիւրոց
ժամանակակցաց վանականաց. բայց՝ յայլոց ժամանա-
կագրաց՝ ծանօթանան մեզ և այլք ոմանք արժանաւորք
յիշատակի. որոց և 'ի մնացորդաց գրաւոր վաստակոցն՝
հաւաստի գէթ 'ի կիսոյ ԺԲ դարու ցելս ԺԳին, մեծա-
պէս պայծառանալ Սկեւռայ՝ գիտնական և գգուշակեն-
ցաղ միաբանօք, և բարգաւաճել առատաղեղ խնամօք
տերանց անաւիկ բերդին։ — Ի միջոցի ամացն յորս Սա-
մուէլ զՍաղմոսամեկնիչն և զյիշատակս Ներսէսի գրէր,
և Կոստանդին նկարէր զաւետարան Ամենափրկչին, յե-
րեան գան Խաչատուրն այն օրհասաց, պաշտօնեայ սի-
րեցելոյ վարդապետին, և Գէորգ վարդապետ հաւաքող
և յերկուող Հարանց վարուց, ընդ տեսչութեամբ հաստ-
րակաց վարդապետին Ներսէսի, յամի 1192. յորում,
ասէ, գտան վարք և խօսք սրբոց Հարցն, «'ի զանազան
» օրինակս, 'ի մի հաւաքեալ 'ի վանքս Սկեւռայ, ընդ հո-
» վանեաւ տեառն Աստուծոյ և փրկչին մերոյ Յիսուսի
» Քրիստոսի տաճարի և մօր Աստուածածնի, և կենսա-
» կիր Սուրբ փայտիս, հրամանաւ ճգնազգեաց եղբօր մե-
» րոյ Խաչատրոյ. քանզի այս աստուածային այրս՝ ստի-
» պեաց զիմ տկարութիւնս՝ զհամակրօն եղբօրս իւր
» Գէորգեայ, նուաղ զփափագ տենչանաց իւրոց՝ այսս
» մատենիս... և շնորհիւն Աստուծոյ կատարեցի՝ ընդ
» ձեռամբ հոգեւոր վերակացութեան Տեառն իմոյ Ներ-
» սեսի արքեպիսկոպոսի սրբոյ, որ այժմ կայ 'ի գլուխ
» սուրբ և հռչակաւոր այս ուխտի միաբանութեան ժո-
» ղովոյ, և հովուէ զմայրաքաղաքն Տարսոն, հանդերձ
» գաւառօք Կիլիկիոյ. և քանզի այս աստուածային այր
» ընթերցող գրոց Աստուծոյ և մեկնող, այլ և փափա-
» գանօք 'ի միասին հաւաքող, որոյ՝ եղբայրս այս Խաչա-
« տուր՝ կամակատար սպասաւոր, և մաքուր անձինն սըր-
» բութեամբ պաշտօնեայ, աշակերտեալ բանից և նմա-
» նութեամբ ընթացից վարուց և բաղձանաց 'ի նոյն նկըր-
» տիլ, որ և սա ըստ չափու իւրոյ՝ ստացաւ մատեանս
» գրոց՝ հաւասար Տեառն իւրոյ և վարժապետի. և զոյն
» 'ի նորին յորդորմանէ և խրատու՝ յօժարութեամբ ետ
» գրել», և այլն։ — Հ. Ջամչեան պատմագիր մեր՝ ասէ
սորին իսկ Գէորգայ նախ քան զհամանունն կրսեր՝ արա-
րեալ Մեկնութիւն Եսայեայ մարգարէութեանն, 'ի յի-
շատակարանի ուրեք գտեալ հաստուած բանի, այլ ինձ
այս չէ ծանօթ. թէ ոչ շփոթիցէ զգործս երկոցուն համ-
անուանցն։ Գէորգս այս երէց՝ թերևս նշանաւոր քան
զամենայն միաբանս վանացն էր 'ի ժամանակին, զի ոչ
միայն վարդապետ՝ այլ և վարժապետ կոչի 'ի Սամուէլէ.
և զնա ընդ Սրբոյ Լամբրոնեցւոյն՝ առաքեաց Լեւոն ընդ
առաջ կայսերն Ալամանաց. և երկոքին նոքա միայն զեր-
ծան յապստամբէ խմբելացուց՝ որք կոտորեցին զըն-
կերս նոցին. և ապա դարձեալ ուղւոյ եղեն 'ի միասին։
Ի միջոց ժամանակի կրկին ուղևորութեանցն՝ Ս. Ներ-
սէս յանձնեալ էր Գէորգայ ընդօրինակել յիւր խակական
բնագրէն՝ զՍաղմոսամեկնիչն, «և նա յօժարութեամբ
» յանձն էառ. պատրաստեաց զնիւթն, և սկիզբն արար.
» իսկ ապա փութացուցեալ յիշխանական հրամանէն
» զձանապարհն որ առ ինքնակալն Հռոմայ՝ Թագաւորն
» Ալամանաց, ձանապարհակից էառ զԳէորգ. և ինձ Սա-
» մուէլի նուաստի (ասէ գրիչն) հրաման ետ զսկսեալն ի
» նմանէ աւարտել. զոր յօժարութեամբ յանձն առի, և
» ըլնդ հաւատով 'ի փառս Աստուծոյ կատարեցի, 'ի թու.
» ՈԼԹ». 1190 [1]։ Այս Սամուէլ է ծերունին որ յաւարտ
գրչութեան Սաղմոսամեկնչին կարգեաց զպատմութիւն
վարուց Ս. Ներսէսի Լամբրոնացւոյ ց'38 ամ կենաց նո-
րին։ Զընդարձակագոյնս զայս յերկասիրութեանցն՝ ըզ-
Սաղմոսամեկնիչս՝ աստ 'ի Սկեւռայս արտագրեալ էր հե-
զինակն. և թերևս հուսկ աստանօր զվերադարձութիւնն
'ի Մեկնութիւն Առակաց գրոց, յամի 1197. զոր ասէ
ինքն «սկսեալ 'ի քննութիւն աստուածախօս իմաստից՝
» երեք ամօք յառաջ (1194)... և յայս ամ որ է ՈԽԶ (1197)
» գնացեալ իմ 'ի Կ. Պօլիս և խնդրեալ իմ 'ի նորին
» պատրիարքէն զոր առ նոսին տեսութիւն Առակացս և
» Յոբայ, ընթերցեալ տեղեկացայ՝ զի զոր առ 'ի մէնջ

[1] Ի չարագրել իմ զայսոսիկ՝ ընաւ և ոչ 'ի միտս անկանէր թէ ապրեալ իցէ ուրեք մատեանն այն ընդօրինակեալ յերկուց յառաջագէմ միաբանից Սկեւռայ. և ահա ըստ անակնկալ բաղդի՝ յետ իբր ութից ամաց անկաւ պատուական սափերն այն 'ի գիրկս իմ. մատեան երկիջեան սուսար և մեծ, որոյ միայն ներքին շրջանակի գրուածոյն երկայնութիւն է 0,40 Զ. լուսանցքն կարեւոր և կարճեալք են, և գունագոյն զարդքն 'ի գլուխս իւրաքանչիւր սաղմոսաց մեծագոյն մասամբ 'ի բաց հանեալ 'ի տխմարաց. քանզի գեղեցիկ զարդք են ճարտարին Կոստանդնի՝ որոյ նկարեալ է զԼամբրոնեանց աւետարանն. գրէ նա և 'ի Սաղմոսամեկնչին կարմրագեղով ուրեք ուրեք զանուն իւր ընդ բուն գրչին, որպէս է տեսանել 'ի նմանահան լուսատիպ՝ որ 'ի Հանդիպոյ, յէջ 99։

» պտղաբերէ շնորհք Սուրբ Հոգւոյն՝ ոչ ինչ նուազ էր
» յոյնմանէ. և նախ քննեալն՝ համաձայն էր և ոչ օտա֊
» րանայր. եկեալ 'ի յարկս իմ՝ երկրպագութեամբ գոհա֊
» ցայ զԱստուծոյ, և քաջալերեցայ 'ի քննութիւնս, հողս
» Ներսէս՝ որ 'ի Տարսոն անուամբ այցելու, և 'ի Սկե֊
» ւայն օթեվանքս՝ բնակեալ 'ի հանգիստ »: — Անդ 'ի
միւսում ամին խոյաւ հանգեաւ բազմավաստակ և սըր֊
բասնեալ հողն այն, որպէս յայտ առնէ ողբախառն բան
քեռորդւոյն համանուան, 'ի մի զուգաւորելով զսուգ քե֊
ռւոյն և զվտարմանն 'ի սեփական բնակութենէն, 'ի դղե֊
կէն Լամբրունի, « և 'ի միաբանակեցաց և հրեշտակա֊
» բնակ ուխտէ յՍկևռայ վերաձայնելոյ. յորում տեղւոջ
» ծնունդ և սնունդ Սրբոյս, և յորոց միջի այժմ դամբա֊
» րան սորա »:

Ի գեղեցիկ յիշատակարանաց ընդօրինակութեան Պա֊
տարագամատոյցին և յընծայականէն առ քոյր իւր Մա֊
րիամ, երևի 'ի համբակ քահանայդ Ներսէս՝ որդի Մա֊
րեմայ քեռ Սրբոյն [1], ոչ միայն անունն այլ և հոգի և ճար֊
տար գրիչ սիրեցելոյ քեռւոյն. ցաւէ մեզ՝ զի ոչ այլ ինչ
մնայ և կամ ճանաչի սորա գրաւոր վաստակ. այլ ուսու֊
մնասիրութեան նորին և հոգեսիրութեանն՝ վկայ են և
բանքն և յորդոր առ քաջ բանասէրս՝ 'ի դրուատ մեծի
արենակցին. որոյ ձեռնատուն գոլով և 'ի վանս նորին
սնեալ, անդ և յետ վախճանի նորին ձեռն արկեալ գրէր
և տայր գրել զՊատարագամեկնիչն, մանն մի « 'ի ձեռն
» ուրումն եղբօր Աչետեաց՝ որբասէր քահանայի, 'ի միա֊
» բանակեցաց վանս անուանելոյ Անապատ. իսկ այլն 'ի
» Սկևռայն վերասացեալ, ձեռամբ ուրումն 'ի կլերիկո֊
» սաց սուրբ եկեղեցւոյն Ջորավար անուանելոյ »: — Նւ֊
աճա միւս ևս եկեղեցի յայտնէ դա, թերևս զՍ. Գէորգն,
որ տեսցի 'ի յետադայդ: — Գեղեցիկ սիրով ըղձայ քեռ֊
որդին Ներսէսի՝ զի արժանաւոր վարդապետք ժամա֊
նակին « յիշատակեսցին առաջի Աստուծոյ, ամենայն
» բարեկամք նորա և երջանիկ վարդապետքս մեր և սա֊
» ծիչք հոգւոյ մերոյ, Գրիգոր և Բասիլ [2], առ որովք
» այժմ դեգերիմք 'ի վարժս. որով լցեալք առ մեզ լինին

20. (Տես զԾանօթութիւնն յէջ 98):

» թերութիւնք Սրբոյն՝ յորմէ գրկեցաք. որք յաղօտ և
» նսեմացեալ ժամանակիս մեր՝ որպէս զաստեղս լուսա֊
» պայծառս փայլեն 'ի գիշերի...: Ընդ սոսին և սնուցիչ
» մեր և տախտակաւ վարժիչ՝ զԲասիլ քահանայ, և զայլ
» ևս ուսումնակից և աշակերտակից անձինս, զՅովհան֊
» նէս և զԲարդուղիմէոս, նա և զամենայն զարմս մեր [3] »:

1 Ոչ յիշի Հայր սորա, այլ գուշակի ազնուատոհմ լինել:

2 Բասիլս այս թողեալ է զկնիք ձեռինն կամ զգրչին՝ յաւարտ
մատենի Պարապմանց Կիւրղի, զոր յիշեցաք ընդ ձեռացագիրս Սրբոյ
Լամբրոնեցւոյն, դոյզն յիշատակաւ. « Ի ՈԻԴ (1175) թուականիս
« շարագրեցաւ բանս աստուածային՝ 'ի ձեռն Ներսէսի. զԲասիլս յի֊
» շեցէք 'ի Տէր, զկնի աշխատողի սորին »:

3 Թէպէտ ոչ երկասիրութիւն երկար, այլ և սակաւ մնացեալք
'ի կրսերոյս Ներսիսէ յիշատակարանք՝ վկայեն ոչ միայն հոգեսիրու֊
թեանն, այլ և խորագոյն իմացմանց և ազնիւ սիրոյ. զոր, որպէս
վասն մեծի քեռւոյն իւրոյ համարեցաք մասամբ իմն ծծել կամ ծգել
յինքն՝ 'ի գրկաց Շնորհալւոյն, նմանապէս համարիմ և 'ի Լամբրու֊
նացւոյն՝ յինքն փոխադրել քեռորդւոյս. վայելչապէս իմն յօրինե֊
լով զհրաշափառ երրեակն Ներսիսեանց՝ յայսմ պարագայի: Վկայ
բանիցս եղիցի գիրն ընծայական՝ զոր գրէ առ հաւատաւոր քոյր իւր
Մարիամ, ներկուռ և արուեստակեալ շարագրութեամբ, առաքե֊
լով ընդ նմին զիւր ձեռագիր օրինակ մի Պատարագամեկնչի քեռւոյ
իւրեանց. « Աստուածային իղձս փափագանաց պատուականագու֊
» նիդ ինձ՝ գիտելով միշտ 'ի տէրունականսն, վասն որոյ ուրախացու֊
» ցիչ առիթ մատուցանեմ քեզ նուէր. Սիրելի հարազատ իմ Մարիամ,
» զոր առ մեզ անցուցեալ յաստուածային Հոգւոյն փչմանէ՝ միշտ
» ընդ տուողին բարգաւաճելոյ առնն, 'ի ստիպմանէ խնդրոյ, յորմէ
» որ վերագոյնդ յայտնէ բան՝ համանմանոյն երգ. զոր երկօք աշ֊
» խատութեամբ արձանագրեալ քոյդս Ներսեսի, ըստ այսմ յաղագս
» որոյ բանս է, քեզ 'ի սփոփանս ընձեռեցի. գիտելով պատուակա֊
» նագոյն քեզ քան զորովք բամահեցեր, զսակի և զականս պատուա֊
» կանս և զորս նոյնպիսի: Նաև յաղագս և յայս ևս զքեզ յորդորե֊
» լոյ. զի որպէս 'ի սկզբանց անտի խոկման քո 'ի կոչումնդ որ եսդ,
» և զանձուկ ընթացից ուղւոյն բուռն հարկանելով բարեբանելոյդ
» էր նախանձարկութեամբ, նոյնպէս յայսմ օրէ հետէ փութալի
» քեզ եղիցի՝ ընդ սկզբանն և կատարածին փոյթ ըստ? հանդիպել,
» թէպէտ և բնաւիցն եմք օտար: Զի մի յանձինս մեր աւարտիցի
» բանն ասացեալ 'ի Տեառնէ. Այս այր սկսաւ շինել, և ոչ կարաց

29. Իսկ վարդապետն այն Գրիգոր՝ է հռչակաւորն և յատուկ Սկեւռացի մականուանեալ, վասն բնակութեանն յայսմ մենաստանի, այլ ծննդեամբ 'ի նոյն ինքն 'ի Լամբրուն աւանէ, վասն որոյ կոչի և Լամբրունացի, կենակից գոլով Սրբոյն, և յետ նորա առաջին համարեալ 'ի գիտունս և 'ի խոհականս. զորմէ ոչ միայն աշակերտեալս սմա Ներսէս վկայէ, զատ 'ի վերոգրելոցն, զոլ այր իմաստուն « և վարժեալ 'ի մանկութենէ ամենայն հին և » Նոր կտակարանօք, ... որոյ ոչինչ էր վերջին գտանել ըստ » ամենայն իրի՝ 'ի սորա հանգունատիպ լինելոյն ». այսինքն հանգոյն կամ հաւասար լինել իրումն մեծի քեռւոյ Ներսիսի. այլ և խորատես ակն Լեւոնի արքայի՝ յետ Ներսիսի զսա մեծարեաց. սմա ետ թարգմանել 'ի յոյն լեզուէ զԹուղթ « Վահանայ կամ Յովհաննու արքեպիսկոպոսի քաղաքին Նիկիոյ, զոր գրեաց առ երանելին » Զաքարիայ կաթողիկոս Հայոց », որպէս ասէ Անուարզեցին 'ի Յայսմաւուրս իւր, « Սուրբ և մեծ վարդապետն » Հայոց Գրիգոր Սկեւռացի », կոչելով: Սմա՝ նոյն մեծ թագաւոր՝ զներքսագոյն և զյետին զաղտնիսն հաւատայր, զոր յետ Աստուծոյ ոչ այլ ումեք կարէր. այսինքն է, մինչ հանդերձեալն էր յանդիման լինել տիեզերաց դատաւորին, « կոչէր զսուրբ վարդապետն Գրիգոր, և » խոստովանէր զյանցանս իւր, և... ընկալեալ զհաղորդութիւն 'ի ձեռաց սուրբ վարդապետին, գոհանալով » զՏեառնէ »: Եւ յորժամ յետ սակաւուց 'ի միւսում ամին (1220) 'ի վախճանել Յովհաննու կաթողիկոսի, և 'ի ժողովելն յընտրութիւն յաջորդի, երկպառակութիւն լինէր յիշխանսն, ոմանք զսա՝ զԳրիգոր՝ կամէին կացուցանել, պարագլուխ իւրեանց ունելով զԿոստանդին տէրն Լամբրունի, զեղբօրորդի Սրբոյն Ներսիսի. յորոյ խնդրոյ արարեալ իսկ է Գրիգորի զգեղեցիկ Ճառն 'ի խորհուրդ մեծի Ուրբաթուն, 'ի բանն Եսայեայ, Տէր ո՞ հաւատաց լրոյ մերում, և յորոյ կատարածին ասէ զնմանէ. « Որ և » զմերս աստուածասէր իշխողի, և տէրունական տօնից՝ » ըստ կամաց յօժարութեան և նիւթական արդեամբք » վայելչապէս պայծառացուցանողի, որ...... խնդրեաց » զայս չնչին և աղքատիմաց բան՝ յանխիմաստ բանաւորէ » և կրկին հոյեցողութեամբ ճայրատելոյ, իմանալեաւ և » զգալեաւ, ընկալցի », և այլն. յետին բանիւն յայտ առնէ զաչացն վատթարել, թերևս առ ծերութեան, որով և յետ վերոգրեալ Թուականիդ արարեալ երևի ըզբանքս. յայտ է 'ի պատմութենէ՝ զի փոխանակ նորա նախամեծար եղև Կոստանդին Ա Բարձրբերդցի՝ 'ի կաթողիկոսութիւն: — Որպէս վերագոյն բանդ եցոյց, որբացեալն Ներսէս զԳրիգորս զայս եգիտ իւր երկրորդ հայր և վարդապետ, և բազում թախանձանօք սմա ետ « արձանացուցանել ներբողիւք զվարսն. որոյ 'ի սկզբան » սակաւ ինչ և զովելի հակառակութեամբ բերեալ, ըստ » սրբոցն օրինի, զերազանցութիւն քան զչափ զօրութեանն զայս վարկանելով, և ապա... յանձն առնու. » քանզի և սէր ըստ սրբութեանն համացեղի լինելոյ՝ ոչ » տայր թոյլ ընդ գրուանօք ծածկիլ և զառ յինքեան » գտեալն. քանզի զնորայն պատմելով և զիւրն ևս իբրև » զօտարի առէր: Որոյ և մեր յայսմ ժամանակի տուեալ » զանձն յաշակերտութիւն, որպէս կրկին ժառանգել » զոր կորուսին. զի թէպէտ 'ի նմանոյն վրիպեալ՝ այլ 'ի սըմանէ թերևս ըստ յաջողելոյ Տեառն մի՛ լիցի ունայնաձեռն ելանել... Եւ եղև... գրութիւն ճառիս 'ի ՈԾԴ. » ամի » (1205): Խոհական գրուած է ճառդ, յատկօճով շարագրութեան, և ոչ սակաւ գեղեցիկ իմաստիւք, այլ անհաս առ ներբողեանն: Ըստ այսմ իմս և զայլ գըրուածս նորին. որպիսիք՝ վերոգրեալ ճառն Աւագ ուրբաթու, և ճառն 'ի Յարութիւն Տեառն, յաւէտ 'ի Կանայսն Իւղաբերս, հանճարեղ տեսութեամբք միաբանելով զբանս չորից աւետարանչաց՝ յորս այլաբանք երևին. որոշելով 'ի միմեանց զհնգեսին Մարեմանս, և մերժելով զկարծիս՝ համարողացն զԱստուածածինն Մարիամ եկեալ ընդ նոսին 'ի գերեզմանն Տեառն[1]. յորս ընդ յստակութեան լեզուի՝ խոհական ընտրութիւն մնաց երևի՝ քան ճարտասանական ձևք: — Ծանօթ է բազմաց նովին յստակ լեզուաւ և մօք՝ միատարր երկոյն Աղօթք նորին, պէսպէս նկատմամբ տնտեսութեանց Աստուծոյ առ մարդս, և մարդոյս կրից և յանցուածոց, « 'ի դիմաց համօրէն » մարդկային սեռի », որպէս ինքն իսկ ասէ ուրեք՝ 'ի կարգի բանիցն[2]: — Աղօթասիրութեան նորա պտուղ է և խոկումն վարուց գերագոյն աղօթկերի մերոյ՝ Ս. Գրիգորի Նարեկացւոյ, զորոյ զվարս գրեաց Սկեւռացին: Ուրոյն է նորա Աղօթք որ 'ի ժամու խորհրդոյ Պատարագին. միւս ևս Աղօթք առ Ս. Աստուածածինն, որոյ սկիզբն է « Ամենօրհնեալ Աստուածածին, տաճար Բարձրելոյն », շարագրեալ 'ի խնդրոյ Պետրոսի քահանայի, ըստ տնօրէնութեանց Քրիստոսի յարմարեալ զաղաչանսն առ Տիրամայրն. և 'ի հասանելն 'ի յիշատակ չարչարանացն և խաչին, յանպատրաստից իմն փոխէ զոճն 'ի չափական և նոյնայանգ բանս.

« Եւ որ կայիր մերձ առ խաչին
Զարչարանաց իմ Յիսուսին,
Եւ լըսէիր ըզծարաւին
Բարբառելոյ քո Միածնին,
Որում զքացախն ետուն յարբումն
Եւ ըզլեղին 'ի ճաշակումն.
Որ հեղուսեօք բևեռեցաւ,
Եւ տիգաւ կողըն խոցեցաւ », և այլն:

— Ծանօթագոյն ևս է ամենայն պաշտօնասիրաց յեկե-

» կատարել. այլ եղիցի արժանի լինել հաստատել զանձինս՝ որպէս » զսա՝ 'ի վերայ ամրագոյն վիմի, անվրդով յամենայն յարուցմանց » մնալով, 'ի փառս Աստուծոյ. ամէն: »

Գուցէ քաջիկ ևս յայտնեսցէ զնոյն ոգի և զոճ գրողին՝ և հակիրճ յիշատակարանս այս՝ յաւարտ ընդօրինակութեան Պատճառի Թղթակցութեան Հայոց և Յունաց, հաւաքելոցն 'ի Ս. քեռւոյ իւրմէ. « Զատացողիս կեանք, զատացողն իւր յոգի, զատացողս » Ներսէս՝ յոյժ վերջացեալ յաշակերտութիւն և որդիութիւն հա» մանուն սուրբ Հօրս, որոյ փափագմամբ տառիցս տարփանօք հա» րեալ յոգի՝ սիրով, յաւելի զսա 'ի մթերս աստուածային շտեմա» րանաց, ըստ? կրկնակի ևս մաղթելով ամբարել: Արդ եղիցի յի» շատակ երիցն 'ի մի բան յօդաւորել մեզ, զայն տուողին և առա» ցողին ընդ աշխատելումն »:

1 Յայս կարծիս ըմբռնեալ է և մեծ Լամբրունացին 'ի գրել զնախընծայ ներբողեանն 'ի Վերափոխումն Կուսին:

2 Բազում ուրեք յաղօթքս՝ զարձակ բանն փոխէ 'ի չափական և մանաւանդ 'ի զուգաձայն յանգական, ըստ ոճոյ Ս. Լամբրոնեցւոյն. որով և ուրեք բռնադատեալ երևի բանակարգութիւնն, և 'ի հասարակի արուեստակեալ է շարադրութիւնն, որպէս և իմաստքն ուրեք ուրեք:

ղեցիս Հայաստանեայց՝ գեղեցիկ ցոյց ստեղծաբան հանճարոյն՝ այբբենակարգ Շարականն որ 'ի Ծննդեան Յովհաննու Մկրտչի, նուագեալ յամի 1198. « Արեգականն արդարութեան ծագման՝ արուեստակդ առաւօտեալ ». յոլովութիւն թուոյ տառից մերոց սատարէ նմա նկատել և դրուատել զՄեծն զայն 'ի ծնունդս կանանց՝ բազմապատիկ օրինակօք, 'ի սկզբնական արուեստիւ կատարելութենէ ծննդեան Քրիստոսի, մինչև 'ի հուսկն. « Կարապետ կրկին իջման Տեառն՝ 'ի ստորին կողմն երկրի » գոլ, և « Ցնծութեան աւետաբեր հոգւոյն որք 'ի դժոխս ». 'ի հարկէ ոչ մոռանալով զյատուկ հանդիսարան կամ զկացուրդ կենացն և զաւիժ կատարածին.

« Բամեալ խնջոյս արբեցութեան՝ յաւուր ծննդեան մահաբերին,
Զքեզ՝ որ խայտալով ծընար՝ տատրակդ անապատի,
Կաքաւելով խնդրեաց 'ի մահ՝ դուստր Հերովդիադայ » [1]:

— Այսչափ ինչ է յինս հասեալ գիտութիւն՝ 'ի գրուածոց և գործոց խրատայէս հաչակելոյն 'ի վարդապետս ժամանակին, Գրիգորի Սկեւռացւոյ կամ Լամբրոնեցւոյ. որոյ թելադրութեամբ կամ հրահանգութեամբ՝ համարի Տաթևացին Գրիգոր՝ յօրինեալ Արիստակիսի վարդապետի զԱրուեստ գրչութեանն, զոր յետոյ ընդարձակեաց և կատարելագործեաց՝ երկրորդ յետ Գրիգորի ընծայեալ գիտնագոյն 'ի վանաց սատի, և զոյգ նմին ծննդեամբ Լամբրունեցի, և կոչեցեալն Սկեւռացի, այն է Գէորգ վարդապետ, յոր ընդ հուպ դարձցի բանս: — Գրիգորի՝ վիճակափոխելոյ 'ի կաթողիկոսութիւն՝ գէթ արժան էր ժամանել յեպիսկոպոսութիւն, թէ և ոչ յիշի այս ստուգիւ, և ոչ 'ի վերնագիրս գրուածոց նորին մակագրի նմա այդպիսի կոչումն. սակայն զի Գէորգ կոչէ զոք 'ի նմին ժամանակի Տէր Գրիգոր դիտապետ ուխտին Սկեւռայ, չէ անդէպ նոյն զսա համարել, և յաջորդ Վարդանայ արքեպիսկոպոսի Լամբրունի [2]:

Յամին յորում չարադրեաց Գրիգոր զներբողեանն 'ի Ս. Ներսէս, այն է 1205, վերյիշեալ քահանայն Պետրոս, որ կոչէ զինքն « տրուպ յորդիս եկեղեցւոյ », ընդօրինակէր զգիրս մեկնութեան Թղթոց, « մերձ 'ի դղեակս Լամբրունի՝ 'ի գերահռչակ անապատս Սկեւռա, 'ի մէջ քրիստոսազգեաց սուրբ ճգնաւոր եղբարց միաբանակեցաց, որոց ձեռնտուութեամբ յանգ ելեալ աւարտեցաւ կտակս սիրոյ կամաց », և այլն. և մաղթէ վասն հօրեղբօր իւրոյ « Խաչատրոյ, որ ծեր տկար ? դեղօք ըղնիւթս պատրաստեաց, որ և աշխատի վասն մեր յամենայն պէտս... 'ի յիշատակ հարազատաց իմոց Իգնատիոսի քահանայի և Եղիայի սարկաւագի, որք յառաջ փոխեցան 'ի Քրիստոս. և սուրբ հօրեղբօր իմոյ Յոհաննիսի, որ զմեզ զամենեսեան սնոյց և ուսոյց... Յայսմ ամի փոխեցաւ 'ի Քրիստոս վարդապետն իմ Յոհաննէս Տղնազգի » ?:

Յետ Գրիգորի և յառաջ քան զԳէորգ՝ 'ի մէջ ԺԳ դարու՝ համբաւէր գիտութեամբ և զգօնութեամբ Մխիթար վարդապետ Սկեւռացի. զոր՝ 'ի վեր քան զայլս արժանաւոր և բաւական վարկան կաթողիկոսն Կոստանդին և Հեթում արքայ՝ առաքել Նուիրակ և վիճաբան առ Լիկատն քահանայապետին Ուրբանոսի Դ, Գուլիելմոս (Բ) արքեպիսկոպոս Տիւրոսի, յԱքքեա քաղաք. ուր եկեալ սորա յամի 1263, դչարէր ընդ ոչ գալ առ ինքն կաթողիկոսին Հայոց կամ Նուիրակի նորին. վասն որոյ դժկամակութեամբ ընկալաւ զառաջինն զՄխիթար. և ուր ուրեմն զիջաւ ընդունել զընծայս կաթողիկոսին. ապա ամքեալ ասէր. « Լուեալ եմ վասն քո՝ զի այր բանիբուն ես դու յազգն քո, զի օկոխք թերևս 'ի քէն ». և կըրկնէր, « այր իմաստուն ես, որպէս ասացի, և զոր ինչ խընդրեմ՝ առնես պատասխանի »: Եւ նորա ըստ պատշաճի խոնարհութեամբ տուեալ զպատասխանին, միանգամայն և զգուշութեամբ, զի՝ որպէս ասէն, « Էր ժողով առ նա (լիկատն) մեծ՝ յաւուր յայնմիկ. քաղաքապետն որոյ անուն Ջուփրի, այր խաղաղարար, և Մայստր (կարգապետ Սպետացւոյ) Գամիլոն, և Քումանտուր (Commandeur) տանն Հիւանդանոցին, և ամենայն իշխանք Ծովեզերեայց, բաց 'ի Բրէնձէն, և բովանդակ աւուգաթքն (avocat) ». ապա սկսան վիճաբանել վասն գլխաւորութեան Առաքելոյն Պետրոսի. յորում՝ թէպէտ և ոչ սակաւ հմտութեամբ Սուրբ գրոց խօսէր Մխիթար, այլ և կանխակալ կարծեօք և ոգւով ոչ կամէր տալ տեղի և ուր արժանն էր: Յետ այսր խնդրոյ՝ գուն գործեաց մեծացուցանել զկաթողիկոսն քան զպատրիարքունս, իբրու այն զի կաթողիկոսն անուն ընդհանրական է քան ըզպատրիարքին, և զի սա՝ քաղաքի կամ գաւառի միոյ գլուխ կայ, « իսկ կաթողիկոսն Հայոց՝ պետ ազգի միոյ ողջոյն »: — Եւ զայսոսիկ երկուստեք տրամախօսութիւնս՝ հանդերձ յաւելուածով պատմութեանն հարեալ 'ի գրի՝ մատոյց 'ի դարձին առ Թագաւորն Հեթում, քառատող չափական բանիւս ընծայութեան.

« Ընկալ զընծայոդ իմ ըզդալաւ, զոր ձեզ նուիրեմ, արքայ Հեթում.
Վեհ էր խնդիրըն քո քան զիս, և իմաստնոյ՝ գործն այլում.
Զի գեղեցիկ գրէր քան զիս, ըստ արժանեաց տեսոյ մտաց քում.
Լեր անարգամեծար առ իս, և նմանեա աստ Տեառըն քում »:

— Այս բանք ընդօրինակեցան 'ի մատենէ գրելոյ յամի 1274, յորում՝ հաւանելի է թէ կենդանի էր հեղինակն Մխիթար. որ յետ այնր յաւելեալ է գլուխ մի բանի, 'ի խնդրոյ Յակովբայ եպիսկոպոսի Կաստաղօնի, ընդդէմ

1 Յառաջեալ էր քան զԳրիգոր՝ գրուածելն իւր Վարդապետ՝ Ս. Ներսէս, գրել 'ի Մեկնութեանն Ամովսայ. « Զանանկն Յովհաննէս՝ ըզտատրակն անապատի, եւ զենս Հերովդէս՝ կօչկացն Հերովդիադայ, 'ի կաքաւելն իւրում »:

2 Թուի 'ի Սկեւռայ լինել ընդ երիցագոյնս ժամանակաւ և այնմ՝ որ 'ի կեան Պարապման գրոց ձեռնագրի Ս. Լամբրոնեցւոյն՝ գրեալ է. « Հրամանաւ Տեառն Ներսիսի, և տիեզերական վարդապետի, կազմեցաւ գիրքս այս, ձեռամբ ումեմն տառապեալ Գրիգորիսի Աբուպայ. արդ Տէր Յիսուս վայելել տացէ երկար ժամանակաւ 'ի կամս իւր. ամէն »:

Ցունաց՝ վասն պատրիարքական աթոռոյ, և յաւէտ ընդդէմ Կ. Պօլսի աթոռոյն։ Զատ յայտանէ չէհաս մեզ գրուած 'ի Մխիթարայ Սկևռացւոյ։ — Բայց արժան է որոշել 'ի սմանէ զգրուածս Վարդանայ Տաշրացւոյ, որոյ ճառեալ է 'ի նմին ժամանակի զնոյն նիւթոյ բանս, և ոչ հանդարտութեամբ և զգօնութեամբ. այն զի ընդօրինակողք՝ բազում անգամ զՄխիթար կոչեն Տաշրացի, և զՎարդան՝ Սկևռացի. դարձեալ և ոչ ընդ այլոյ Մխիթարայ շփոթել, այն է Սասնեցին, որ և կրսերագոյն է ժամանակաւ։

Ի մէջ ժամանակի բովանդակ ԺԳ. դարուն՝ ոչ գտանեմ այլ յիշատակ Սկևռայ, բայց զԹագուհին 'ի նմին Մարեմայ՝ քեռ արքային Հեթմոյ, Կեռա-Մարի կամ Կալա-Մարի, Գունդէս Ճաֆուն կոչեցելոյ, այսինքն Կոմսուհւոյ Յոպպէի. կին զոլով Յովհաննու Իպլինեան տեառն Յոպպէի. և մխիթարութեան աղագաւ, թերևս վասն մահուան հօր իւրոյ և արքայահօր Կոստանդնի՝ եկեալ (յամի 1263)[1] 'ի Լամբրուն, առաջն վախճանեցաւ, « Թողլով երկուս ուստերս և երիս դստերս », հայկական անուամբք կոչեցեալս, Օշին և Հեթում, որք և յարքունիս իսկ Հայոց թուին կեցեալ. զի և որդի երկրորդին Բալիանոց անուն՝ եղև Սենեսկալ Հայոց։ Ի բազմաթիւ հանգուցելոցն 'ի Սկևռայ՝ որոշակի միայն զՄարեմայս և զՍ. Ներսէսի գտանեմ յիշատակեալ զԹագուհին։

30. Թուի մերձ 'ի կէս ԺԳ. դարու ընծայեալ 'ի Լամբրուն վերյիշեալ երկրորդ գիտնական վարդապետն Գէորգ Սկեւռացի. որ յամի 1267 ընդօրինակելով զՏօնապատճառ գիրս՝ յայլ և այլ վանորայս Մեծաց Հայոց, ասէ գրեալ, «'ի ձեռն տարաչխարհիկ պատանւոյ ումեմն Թար» մասար գրչի՝ Գէորգեայ, 'ի Կիլիկեան յանմատչելի » ամրոցէն Ղամբրուն կոչեցելոյ, որ է 'ի ստորոտ մեծի » լերինն Տաւրոսի։ Որ ոչ եթէ իբրու ճարտար գոլով յար» մեաւ զրչութեանս յանձնապաստան համարձակութեամբ » ձեռնամուխ եղև . . . այլ 'ի յոլով խնամս վայելեալ » (Գրիգորի արքեպիսկոպոսի Բջնոյ և ձեռասուն որդւոց » նորա տէր Վարդանայ և տէր Գրիգորի)... հարկեցուցիչ հրամանաւ սոցին... ստորութեամբ նժդեհակցի » պանդխտութեան իւրոյ և դառնաբարակի անկատարութեան՝ Յովհաննու քահանայի...։ Սակայն և ոչ կամակատար եղև մեզ գիտել տեղւոյ և ժամանակի, այլ » փոփոխելով տեղւոջէ 'ի տեղի, գրեթէ և մեք եւս 'ի բաբուց 'ի բաբս և խաչհրդոց 'ի խաչհուրդս լինէաք յեղափոխեալ... Նախ 'ի տիեզերահռչակ ուխտն Վիրապին.. » սակս կրթութեան 'ի մեծ վարդապետէն և յաստուածազգեաց առնէն Վարդանայ... և անտի փոխեալ առ » մեծ իշխանն Քուրդ, և մեր զկնի նորա հետևեալ՝ ժամանակ ինչ արարաք յանուանեալն Սաղմոսավանք, » ուր և զաւաքինն աւարտեցաք հատոր սորայ մատենիս. » և քանզի 'ի դէպ լինէր և անտի եւս փոխել նմա 'ի գործ » բարւոք ուսուցչութեան՝ 'ի տեղի ուր Տէր յաջողեսցէ, » յուղարկեաք եղեալ մեր 'ի ստացողէ տառիս՝ 'ի բուն » տունս իւրեանց, 'ի մեծահռչակ հրեշտակակրօն առաւածարնակ սուրբ ուխտս Թեղենեաց, ուր և յանկ » իսկ հանաք զաւաջարկեալս. բարւոք ընկալեալ զմեզ » բարեբարոյ և օրյնաւէր քահանայի Սարգսի, սիրով և » յօժարամիտ կամօք սպասաւորելով », և այլն։ Վարդապետն և ուսուցիչն Վարդան՝ է մեծահռչակ Արևելցին, Պատմիչն և մեկնիչ, որոյ արժանաւոր գտանի աշակերտ գրիչս այս. որ և անյաւակման իսկ առելով զինքն յարմեաւ զրչութեան տայ նշանակս ճարտարութեան[2] յայնմ կարևոր մակագրութեան, յոր՝ հարկ է թէ քաջափայլ երևելով յայլ գրութիւնս իւր, յետ դարձին 'ի Սկևռայ՝ աղաչեցաւ նախ 'ի Կաստաղեայ ումեմնէ (թերևս որ յետոյ կաթողիկոսն եղև, և յոր դարձցի բանս 'ի մօտոյ), և ապա 'ի Նախածանօթ Ստեփաննոսէ Գոյներ Երիցանց, և գրեաց զնոյն արուեստ, ընդարձակելով և լրացուցա-

1 Յայսմ ամի գրելով եղբօր նորա Յովհաննու արքեպիսկոպոսի՝ յիշատակարան աւետարանի միոյ, ասէ վասն սորա. « Բարեպաշտն Կալա-Մարի Գունդէս Ճաֆուն, որ զմազաղաթ տառիս » շնորհեաց կրսերիս իւր »։

2 Ոչ միայն յարձակ բանի՝ այլ և 'ի չափականին Ճարտարութեան՝ անդստին յայնմ ժամանակի, ցոյց ընծայէ և այս յիշատակարան գրեալ 'ի նմին մատենի. որոյ սկզբնատառք տանց կազմեն ԳԷՈՐԳ ՊԱՏԱՆԻՆ Ս ԳՐԵԱՑ. իսկ վերջնատառք՝ ԳՐԻԳՈՐԻ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ.

Քութեան տառիս ներցուցողի զփառըս տանից
Եղև նըպաստ ոմն 'ի գրչաց 'ի բնաւս անարգ.
Ոկեալ յերկրէ հեռաստանէ 'ի գիւտ բանի,
Եւ պատահեալ քաջն ուսուցչի, որում բաղձայր.
Րւր խնկեխնկ ապա հարկի յոմն եղբաւրէ,
Այն ինչ յաւարտ գրեթէ հասեալ վարժից բանի,
Դաբունական անուանն 'ի ճաճ գոլ արժանի,
Սակըս սիրով խոկման յօրէնըս Տեառն ցանգ.
Քորովական խանդիւ տառիս այսմիկ բաղձայր,
Լինել նըպաստ և ձեռնտու իւրըն փութով։
Յատանեկին ապա մաղթել ոչ հրաժարէ.
Թէպէտ և չէր նա բաւական առ այն խնդիր.
Ծայլ հայելով առ յոյժ նորա փափագ սիրոյ՝
Եւ հրամանին փորձի լցող գոլ ըստ կարի.
Մագնապ հասեալ ապա եւ այլ իմըն հարկի՝
Ցայսըր փութոյ վերպէր պաշտել զնա պարապով.
Ծայլ և խրճիթն ոչ պատշաճեալ ըստ պատշաճի,
Եւ եւս գործիքըն որ արհեստիս այս ձեռն տԱ.
Ճեղաբառեալ յոլով անգամ կրթիւր յապուշ.
Տինա յաւէտ 'ի զինչ առնել տարակուսէր։
Դ վեհագոյն վեհին խնամոց կարօղացեալ
Առ այս նըւագ զկատարել զաւեալս յաւանդ.
Ճերբողական ձայնիւ գրուատ փառաւորութեան
Իբըր որիսուր վայելչապէս ձաւնէ նըմԱ։
Ոլթէ իցէ հաճոյ կամ ոչ տեսողաց՝
Նա 'ի յիւրոյն փութոյ չեղև զըտեալ վըրէՊ.
Քերազանցեալ էր խնդրողին տենչ բաղձանաց,
Յորմէ տուողըն յաղթեցաւ իբր 'ի վեհէ.
Դալէական իմըն մասամբ զկամս ընձեռեալ
Իբրու զլուծայսն երկու զոր արկ այրին աղքատ.
Ոզեալ առացող տառիս առ գրողըն մեծախոհ,
Եւ զըխալանսըն ներելով զերկս ընկալցի.
Ծրժանաւոր լինել և ինքն 'ի Քրիստոսէ
Գտանել ներեալ և ողորմեալ յօրըն վերջին.
Փընծալ պարել ընդ բազմելոցն յառագաստին,
Երրորդութեանն երգել ըզփառս միշտ ընդ նոսին։

Մինչ յայսպիսիս զեզերէր Գէորգ գրուածս և քերդուածս՝ յատարութեան անդ, լուաւ զաղէտս բնիկ աշխարհին, զաւապառակ Եգիպտացւոց, զողորմ պատերազմն Մառեայ, հանդերձ այլովքն, և յաւել 'ի յիշատակարանն. « Աւաղ նա՛, բռնադատէ զիս աստանօր » թախիծ սրտիս՝ յողորմելիս յամել պատմութիւն. զի յանցելումն » ամի (1266) ներգրութեան այսր մատենիս, սուլտանն Մսրայ բազ» մաձեռն զօրու պատրաստութեամբ... սպայիւ, իբր 'ի ցասմանէ » Աստուծոյ ածեալ, եմուտ յերկիրն Կիլիկիոյ », և այլն. և յայլ եւս ընդեռատան տողս համառօտէ զդէպս իրացն։

նելով զգրուածն Արիստակեայ վարդապետի. և 'ի սկըզ-
բանն ասէ. « Անպարապ անձամբ ձեռնարկեցի 'ի գրել
» զսա՝ այս թղթսա, և ծաղկաքաղ արարեալ զմասն
» ինչ գրելոցն յԱրիստակիսէ հռետոր գրչէ՝ եդի աստ.
» է ինչ զոր լուծեալ 'ի Նմանէ, և է յեղելոցս աստ տա-
» կաւին տարակուսիւ փակեալ. իսկ 'ի ծանօթ և յերկա-
» րեալ Նորայն բանից՝ էր ինչ յորոց երկայնութենէն
» զանց արարի, և էր զոր վասն հաւաստի զոյգն՝ թողի.
» և զերկրորդն լռեմ...։ Այլ վասն զրադարձիցն՝ զոր
» սակ յիշեաց միայն Նա և էանց, սաց սակաւիկ մի ըդ-
» հանգամանսն և զպատճառս ևս ըստ կարի »։ Այլ և
խնդրող գործոյս, թէ զԽրատս գրչութեան « արարեալ
» էր զսա յառաջագոյն Գէորգեայ վարդապետին 'ի խըն-
» դրոյ ուրումն (Կոստանդեայ), զորոյ զպակասն 'ի Նմանէ՝
» յետոյ իմ 'ի վարդապետէն խնդրեալ, և Նա կատարեաց
» զխնդրուածս իմ, եդեալ յառաջ զԱրիստակիսի արա-
» րեալն, և զթերին 'ի Նմանէ կատարեաց ինքն, ինձ Նը-
» ւաստիս Ստեփանոսի Գոյներ երիցանց. որոց ողորմես-
» ցի Տէր, արարողին և խնդրողին »։ Ոչ է Նշանակեալ
ամ յօրինման գրուածոյս. Գրիգոր Տաթևացի յամի իբր
1408 մեկնաբանեաց զայս գործ՝ իբրև դժուարիմաց, որ-
պէս և զԱրիստակիսին՝ որ էր « ծանօթ եղեալ անհաս և
» ճարտար գրչի Գրիգորի Լամբրոնացւոյ ». և վասն որոյ
բանս է՝ ասէ. « Գէորգ վարդապետն 'ի Սիս մայրաքաղա-
» քի », գրեալ զայս արհեստ։ — Ծանօթագոյն և Նախա-
դասական գործ Սկևռացւոյս Գէորգայ՝ է Մեկնութիւն
Եսայեայ մարգարէի. զորմէ, քանզի ոչ գտանի բան Նորա
և ստոյգ թուական յօրինման, ոչ 'ի յառաջաբանի և ոչ
'ի վերջաբանի գրոցն, կարգեսցուք զընդօրինակողացն
առ կենդանեաւ հեղինակին. յորոց մի ոմն՝ Երեմիա քա-
հանայ՝ գրէ յամի 1295, եթէ Հեթմոյ Բ արքայի (1289-
1307) « տեսեալ զմեկնութիւն համարձակախօս աս-
» տուածատես մարգարէին Եսայեայ, և զի մեծն Եփրեմ
» կարճ և համառօտ քաջոլորակ բանիւք էր անցեալ ընդ
» Նա, իսկ աստուածաշնորհ Յովհան Ոսկիբերան... ճռ-
» խաբար խօսեցեալ. արդ բարգաւաճս այս փեսայ Հե-
» թում 'ի մտի եդեալ զսոսա 'ի մի ժողովել... խընդ-
» րեաց զայս առնել հարկեցուցիչ հրամանաւ՝ 'ի յերրեր-
» ջանիկ և 'ի շուարեալ Բարունեայեանն Գէորգեայ, որ
» ընդ այսու ժամանակաւ առաքինութեամբ յանձին Ներ-
» գործութեամբ փարթամացեալ, որ այժմս քրտնաջան
» երկամբք հրաւանգէ զհամբաւն՝ որ բանի են հետևեալ՝
» գյոլովս։ Իսկ սա իբրև քարոզ ճշմարիտ՝ հնազանդեալ
» հարկեցուցանող հրամանին, և զի էր Սարգսի վարդա-
» պետի հոգացեալ, առեալ և զսյն, և զայլ բանս սրբոց
» մեկնչացն՝ համառօտ զուգեաց առ իրեարս... և գրեալ
» ձեռամբ իւրով ետ Նմա։ Արդ ես զայս տեսեալ վերջինս
» 'ի բնաւիցս, փցնամիտ աշակերտս սորին Գէորգեայ,
» անարժան քահանայ, պիտակագործ անուանեալ Երե-
» միայ յորջորջեալ, հետեւսն աշխատեալ երկու անգամ
» առ թագաւորն իմ երթեալ, խնդրեցի զարարեալ օրի-
» Նակն. և վասն սիրոյ Նորին ետու գրել զսա Լևոնի դպրի
» լաւարհեստի գրչի, 'ի յիշատակ բարի մեղուցեալ հոգւոյ
» իմոյ Երեմիայի, և ծնողին իմոյ Շահայի, որ բաղումս
» է աշխատեալ զհետ մեր, և հօրն իմոյ Կիրակոսի և
» քուրն իմոյ Հեմեքուոյ, որ ետ դրամ Խ 'ի գրոց սորին,
» և Սարգսի քահանայի որ պատրաստեաց զնիւթ սորին »։
— Ի բանից Երեմիայի յայտ լինի յառաջ քան զամն 1295
յօրինեալ Գէորգեայ զգործդ. բայց է 'ի ձեռին մերում
հնագոյն ևս օրինակ, յորմէ յայտնի՝ զի թէ բնագիրն առ
թագաւորին կայր, սակայն վաղագոյն ևս ընդօրինակեալ
էր յայլոց. և հարկ ուրեմն է զի չորագրեալ իցէ յառաջին
ամս պայազատութեան Հեթմոյ, 'ի միջոց 1289-92 ամաց.
քանզի յօրինակիս մերում գրէ ոմն ընտանեբար. « Ով
» եղբայր Սիմէոն, պիղծ գիր գրեցեր, սպա սիրուն ես
» թաթխել. թուիս ՉԽԱ. դեկտեմբեր ժե », որ է 1292
ամին [1]։ — Յառաջին գլուխս մարգարէութեանն՝ առնու
Գէորգ և զմեկնութիւնս Ս. Կիւրղի, իսկ զԵփրեմին և
զՈսկեբերանի ընդ բովանդակ գործն, ընդ որս և զՍար-
գսին՝ Նախ քան զինքն հաւաքողի, որ թէ ով ոք էր՝ ոչ
գիտեմ. և 'ի հասանել մեկնութեանն 'ի բանն Եսայեայ՝
Տէր, ո՞ հաւատաց, անդ առաւօրէն հիւսէ զբանս Նախ-
Նոյն իւրոյ Գրիգորի վարդապետի՝ 'ի կարգս բանից երկո-
ցուն սրբոց հարցն. դուն ուրեք առեալ վկայութիւնս և 'ի
Գրիգորէ Աստուածաբանէ, Նուազագոյն ևս 'ի Բարսղէ
և յԱթանասէ։ — Ի գրաւոր վաստակոց Գէորգեայ եր-
կոքին այսօրիկ աշխարհածանօթ են դպրագիտաց մերոց,
Արուեստն գրչութեան և Մեկնութիւն Եսայեայ. այլ
վկայի յաշակերտէ միոյ Նորին, եթէ արար Նա և Գանձս
տէրունականաց և տօնից Սրբոց, և են անշուշտ որոց մը-
Նասցէ կայեն զԳէորգ անուն. այլ յայտ է թէ ոչ ա-
մենեքին, զի են և հնագունի ուրումն Գէորգեայ այդ-
պիսի Գանձք, գտեալք յօրինակի գրելոյ յամի 1241, մինչ
թերևս ծնեալ իսկ չէր Սկևռացին։ Աշակերտն այն Նորա,
Մովսէս վարդապետ՝ ասէ. « Գծէր և Կանոնս կարգա-
» ւորս, և բանս խրատականս վասն Խոստովանութեան
» առ 'ի յօգուտ տգիտաց քահանայից. առնէր Հաւաքս
» գլխոց և Ցանկս և Նախադրութիւնս Աստուածաշնչից
» տառից. գրէր և Ճառս Ներբողականս 'ի պատիւ Սըր-
» բոց. առնէր և Համառօտ Մեկնութիւն Գործոց Առաքե-

[1] Այս ևս օրինակ գաղափարեալ է 'ի բնագրէ հեղինակին, որ-
պէս տայ իմանալ յիշատակ մի գրչին. « Ով երանեալ սուրբ ըն-
» թերցողք, ծառայակիցք և եղբարք իմ 'ի Քրիստոս, 'ի տեսա-
» նելն զանհեդեդ և զանարհեստ գրիչս՝ աղաչեմ մի մեղադրէք.
» զի թէ և դոյր կարողութիւն փոքր մի այլ լաւ գրել, սակայն ոչ
» կարացի. զի կարի ստիպով յարաորք էի վասն օրինակին, և
» միայն յաւարտ եկանելոյն էր փոյթն և ոչ արուեստ գրոցն. զի
» թէ և գիրս յոլի է, բայց [illegible] է.
» որոյ աշխատողին 'ի սա՝ Տէրն [illegible] տացէ, և ինձ մե-
» ղուցելոյս. ամէն »։ — Միւս ևս ընդօրինակող յամի 1320, յի-
շեալ զընդարձակ մեկնութիւնն Եփրեմի, Կիւրղի և զՈսկեբերանի,
ասէ. « Եւ էպէտ սոքա իւրաքանչիւր [illegible] կատարեալք
» էին յիւրաքանչիւր գիրս, և օգտակարք, բայց գրչաց մեծագունի
» կարօտէին և լոյն մեծասար մնաց. յաղագս որոյ օգտէին, այլ
» զրնթէ ոչ ամենեքին։ Զայսորիկ տեսեալ մեծիմաստ արքայն Հա-
» յոց Հեթում՝ Միակեցն կոչեցեալ, և խնդրեալ 'ի հոգևոր վար-
» դապետէն Սկևռացւոյ Գէորգ կոչեցելոյ, որպէս զի ըստ յօժա-
» րութեանն իւրում աշխատեսցի 'ի սմա, և ըստ իմաստութեանն
» համառօտեսցէ և 'ի մի վայր հաւաքեսցէ. որպէս զի հանգի-
» պեալքն սմին՝ առանց աշխատանաց և ամենեքեան վայելեսցեն
» 'ի սոցանէ. իսկ Նորա 'ի յանձն առեալ և կատարեալ զխնդիրս
» Նորա գեղեցիկ յօրինուածով, որոյ օրինակն աստ առաջի կայ [illegible]
» սողացդ »։ Բայց լինի 'ի յիշատակարանացս՝ վաղվաղ ծաւալումն
գրոցն՝ բազմաց ընդօրինակութեամբ, յորմէ և մեծ վարկ հեղինակին։

» յոցն, 'ի խնդրոյ Արքայեղբօրն՝ Տեառն Յովհաննու. . .
» Բազում բանս պիտանիս հաւաքէր 'ի գանձուց աս֊
» տուածայնոց, առ 'ի վարժումն մանկանց նորագունից»:
— Երկրորդ 'ի կարգի կարևոր գործ գրաւորական Գէոր֊
գեայ՝ արժան է դասել զՀամառօտ մեկնութիւնն Գոր֊
ծոց առաքելոց, զոր ուղղէ առ հարազատն Հեթմոյ Թա֊
գաւորի, «առ խնդրօղն համառօտին՝ տէր Յովհաննէս»
Արքայեղբայր եպիսկոպոս, ասելով. «Ահա, ո՛վ աստուա֊
» ծասէր հայր իմ և տէր, հարկեցուցիչ խնդիրս քո և պատ֊
» կառելի չուք երեսացդ՝ դարձեալ գրաւեաց զիս ահիւ...
» քանզի հրամայեցեր ինձ դէմ յանդիման՝ տալով հան֊
» գամանս օրինակի, 'ի լայն և 'ի հարուստ մեկնութենէ
» (Եփրեմի և Յովհ. Ոսկիբերանի) Գործոց Առաքելոյն՝
» համասար խմացուածով զսպել զերկարութիւն բանիցն՝
» համառօտ կարգաւ:... Զորոյ որբոց երկնընթաց ոտիցն
» բուռն հարեալ, ահիւ՝ նախ անտեսութիւն յանդգնու֊
» թեանս իմոյ աղերսիւ հայցեմ... առ 'ի բաւական լինել
» ինձ զխորհմաց և զսպածառափույլ նոցին բանս... զա֊
» ռանձնացեալն երբէք և զհամաձայնեալն ուրեք՝ ընդ֊
» ելուզել հիւսմամբ, իբրև զականս պատուականս, կամ
» իբրև զանթառամելի զանուշահոտ ծաղիկս՝ բոլորելով
» կազմել պսակ յուսոյ աստուածասէր գլխոյ խնդրողիդ..
» և զդոյզն իմ զաշխատութիւնս՝ Թողութեան մեղաց
» յԱստուծոյ հայցմամբ վարձատրել»: — Պատուական
է այս վաստակ քաջահիւս յեռմամբ բանից մեկնչացն, և
այնքան առաւել՝ որքան զի չկան արդ 'ի ձեռին մերում
բանք «բուն և ընդարձակ մեկնութեանց սրբոց՝ Տեառն
» Եփրեմի և երանելւոյն Յովհաննու», որպէս ասէ հա֊
մառօտիչդ. զմին՝ «աստուածուսոյց հանճարեղ» կոչե֊
լով, զմիւսն «քրիստոսածաւալ աղբիւր իմաստից ամե֊
» նահռչակն Ոսկեբերան». և ըստ օրինակի Մեկնու֊
թեանն Եսայեայ նշանակէ զանուանս նոցին 'ի լուսանցս
գրոցն, որպէս և սակաւ ուրեք զԱնդրէի Ներսիսի Լամ֊
բրոնեցւոյ, զԱստուածաբանին, զերկոցուն Կիւրղեանց,
զՇնորհալւոյ և զԿիրակոսի ուրումն. 'ի 55 գլուխս կամ
ճառս տրոհեալ, և 'ի վերջ նոյին կարգեալ յորդորակս
համառօտս: — Հայցմամբ նորին արքայեղբօր բանասիրի՝
յամի 1283 գրեաց ևս Գէորգ՝ «Դրուատ ներբողական
» բանի յաստուածարան աւետարանիչն Յովհաննէս, 'ի
» պատկառեցուցիչ խնդրոյ Յովհաննու եպիսկոպոսի եղ֊
» բօր բարեպաշտ արքային Հեթմոյ, 'ի թուականին ՉԼԲ.
» Գէորգեայ վարդապետի երջանկի Սկեւռացւոյ ասա֊
» ցեալ», որպէս ծանուցանէ խորագիր գրուածին, զոր
իմ չէ տեսեալ: — Այս ամենայն ծանօթ երկասիրու֊
թիւնք բաւականացին 'ի հաստատութիւն և 'ի յաւե֊
լուած համբաւոյ և մտաւորական զարգացմանն Գէոր֊
գեայ, յոր անդստին 'ի մանկութենէն խնամով մարզէր
զնա քեռին իւր Գրիգոր՝ դիտապետ Ուխտին. «յորում
» և քան զյոգունս առաւելեալ գտանէր. և յորժամ յար֊
» բունս հասանէր հասակի, ընթանայր նա և յեւս ա֊
» ռաւելու. որ և դարձեալ լինէր անտի բազում բարգաւա֊
» ճեալ փառօք, և եկեալ դադարէր 'ի տեղի իւր. և բնաւ
» ոչ այլ իմիք փափագէր՝ բայց վերծանութեան աստուա֊
» ծային տառից. որով և զյաւլովս վարժէր՝ և կրթէր...
» և հրամանաւ հաստատէր, և գաւազանաւ ջահաւորէր.
» 'ի խոնարհութիւն կրթէր և յերկիւղածութիւն յորդո֊
» րէր . . . : Եւ այսպիսի ամենեցուն նախ զանձն տայր
» օրինակ. զի զոր բանիւ ուսուցանէր՝ զնոյն և գործով
» կատարէր»: — Մեծի համբաւոյ նորա և վարկի նշան
է և այն, զի ընդ սակաւուց ոմանց վեհից սրբոց՝ նշա֊
նակի ամ մահուան իւրոյ 'ի չարայարութեան ժամանա֊
կագրութեան Սամուէլի, եթէ «Ի սոյն ամի (ՉԾ) փոխե֊
» ցաւ 'ի Քրիստոս սուրբ և առաքինի վարդապետն Գէորգ
» Սկեւռացի»: Իսկ աշակերտ նորին Մովսէս որ գրեաց
» Դրուատ բանի սուղ ինչ պատմագրաբար յերջանիկ
» Բարունապետն և 'ի քաղցրաբարբառ վարդապետն
» Գէորգ Լամբրոնեցի», նշանակէ յաւարտ բանին ըս֊
տուգիւ և զժամանակ մահուանն. «Ճշմարտութեամբ
» քաղաքավարեալ 'ի կենցաղումս՝ հանգեաւ խաղաղու֊
» թեամբ 'ի Քրիստոս յամսեանն յունվարի, որ օր մետա֊
» սան էր ամսոյն, յաւուր չորեքշաբաթի». յ'ՉԾ Թուին,
այն է վերջին ամ ԺԳ. դարու (1300). որով մարթ է ա֊
սել կնքեալ սորա և զշարս ընտիր մատենագրաց մերոց,
զկնի իւր թողլով միայն զԵրզնկացին և զՄաշկևորցին՝
քաջընթաց հետևողս: Առատանայ Մովսէս 'ի գրուատ֊
զկէսն՝ որ է ողջոյն էջ մի բանի՝ հարևրաթիւ զովասանա֊
կան մակդրութեամբք. «Արին և վեհն և հռչակաւորն
«յամենայնի. առաքինին, հեզն, հանդարտն, խոհեմն,
» ողջախոհն . . . անհամեմատն յարդեան ժամանակիս,
» աննմանն, անհանգունակն... պատուական պարծան֊
» քըն ազգիս յաբեթական, քաղցրաբարբառն սոյզ
» յաւէտ», և այլն: Եւ ոչ այսոքիւք շատացեալ՝ յաւելու
և Ողբս չափական բանիւ, լաւագոյն քան զարձակ բանն,
թէ և անժամանն յանարուեստ և գերարուեստ Ողբս Խա֊
չատրոյ՝ 'ի վեհագոյնն Լամբրոնեցւոյ. և ընդհատեալ
զչափականն՝ դարձեալ հետևակէ տողս ինչ ատաղակա֊
նըս. «Աւա՜ղ ինձ յետնեալս, թէ որպիսի՜ հայր կորու֊
» սի. զորպիսի՜ դաստիարակ. զորպիսի՜ յորդորիչ և մխի֊
» թարիչ... Ո՜ հայր պատուական, ա՜յլ ո՞չ գրես առ իս
» զբան և զգիր քո պատուական. ա՜յլ ո՞չ լսեմ զբերկրա֊
» կան լուր քո 'ի հեռաստանէ» . . . : Եւ միւսանգամ 'ի
չափականն արշաւէ. և հուսկ զայս կարգէ վերջաբան.
«Այս գծածք հանդիսի վասն երջանիկ առն Բարունա֊
» պետի Գէորգ անուն կոչեցելոյ, ոչ սուտակապատու֊
» թիւն կամ կեղակարծ բանից յօդումն, այլ ճշմարտի
» ստուգութիւն, առ 'ի յորդորումն զկնի եկելոց, 'ի փառս
» օրհնելոյն Աստուծոյ յաւիտեանս. ամէն»: — Զողբոյն
չափականս կարգեմք 'ի ծանօթութեան՝ 'ի պարապումն
բանասիրաց [1], յորս նկատելի են բանքն,

«Իբրև զհօրանս հօտից այծից
Մինչ յօրինէր զշարս տողից»,

և որ զհետ այնր՝ հինգ տողք: — Մոռանայ գրուատիչն

[1] Աւա՜ղ իմոյս թշուառութեան,
Անմխիթար սրգոյս դիպման:
Ըզբաղձալին իմ կորուսի
Զբարունապետըն զովելի.
Գէորգ անուն հռչակաւոր
Ամենեցուն զոլ հրաշաւոր:
Բազում որդիս 'ի փառս ածեալ,
Յոլով բերմամբ բարգաւաճեալ.

կամ ոչ պարզապէս յիշէ զմիւս եւս յոյժ պիտանի հասարակաց գործ, որ և յայտարար ստուգասէր և չափագիտակ հանճարոյ Գէորգայ. այն է ընտրութիւն և հաստատութիւն բանից և եղանակաց Շարականաց մերոց: Ծանօթ է բանասիրաց, զի 'ի ձեռագիր յիշատակարանս երգարանիս, անդստին 'ի սկզբանէ ԺԳ դարու՝ 'ի յոլովս նշանակի՝ գրեալ ըստ լաւ և ընտիր կամ ստոյգ օրինակին՝ որ կոչի Խլկցի. և յոմանս վկայի զի ընտրողն այն էր Գրիգոր՝ առաջին վարժապետ Սսայ և քաջ քարտուղար, մականուանեալ Խուղ: Արդ, Առաքել Սիւնեաց եպիսկոպոս 'ի Լուծմունս Սահմանաց Դաւթի Անյաղթի, ասէ, ճըշմարտեալ բանք երգոցս՝ « Խլկու օրինակն է՝ 'ի Շարա-
» կանացն, զոր մեծ վարդապետն Գէորգ ուղղեաց, այն՝
» որ զԵսայի մարգարէն մեկնեաց 'ի խնդրոյ Հեթում
» Թագաւորին 'ի Սիս... զի արհեստն առոգանութեան
» խառնեալ լիցի 'ի յերգսն. որպէս նոյն Խլյն օրի-

Ծնանէր ծնունդ միշտ հոգեւոր
Զարդիւնարարն և շնորհաւոր.
Մակեաւկի տառիւք պճնէր,
Հրաշիւք բանիցըն զարդարէր.
Գրախեցիս հմտաւորէր,
Դարձմամբ ըզնոյն ծանուցանէր.
Բարի բաշխմամբ զբանն ողորկէր,
Կարգաւ ըզնոյն ուսուցանէր:
Թելադրութիւն տայր արհեստի,
Գրոյ և բանի յամենայնի:
Երկամբք միշտ գայր զաշակերտօքն
Պաճուճազարդ գործէր շնորհօք.
Ահարկու գոլով հեղգոց,
Միշտ յորդորող փութացելոց:
Մտավկայից էր խրախութիւն,
Հեռագունիցըն տրտմութիւն:
Ականատեսըքն բերկրէին.
Որք վերիպէինըն՝ տրտմէին:
Զի բանքն՝ օրէնք էր տիրապէս,
Առ ընկալուչսըն ստուգապէս:
Սուր երկսայրի՝ որպէս ասի,
Միշտ հատանող գոլ անուղղի.
Հրով Հոգւոյն միշտ հրաշէնէր,
Զխաւարագոյնսըն տաշորէր:
Բեղնաւոր բուսոց բարեաց,
Թելադրութիւն տայր աւետեաց:
Զեռամբ գրեալ բանիւ պատմեալ՝
Զամենեսեան Տեառն աւանդեալ,
Ըստ հրամանի Տեառն Յիսուսի
Եւ մեր Փրկչին ամենայնի.
Զորըս բանիւ վարդապետէր,
Գործով ըզնոյն օրինակէր:
Դաստիարակ գոլ աղքատաց,
Եւ որբանեակ միշտ օտարաց:
Հիւրոց հնազանդ գոլ և հըլու,
Ըստ մեծի հաւրն Աբրահամու.
Սպասաւոր և պաշտօնեայ,
Եւ որբանեակ որպէս ծառայ:
Ոչ հրամայէր կամ պատուիրէր,
Այլ զնոյն անձամբ միշտ վճարէր.
Մխիթարէր զվշտագնեալսն,
Ուրախ առնէր զտխրացեալսն:
Ճանապարհ յաւէտ հորդէր,
Եւ ժողովուրդ Տեառըն կազմէր:
Պարիսպ գոլ պըղընձի,
Իմանալի սիւն երկաթի.
Զանձըն մատնէր 'ի մահ վըշտի
Վասն աղքատի և օտարի:
Պետրոսաբար 'ի մահ դիմէր,
Եւ զՅիսուսին պատկեր բերէր.
Զսէր աշխարհիս մեռուցանէր,
Ինքըն սիրոյ ամէն մեռանէր:
Վիշտըս յոլով յաւէտ կրէր,
Ճշմարտութեան վասըն ճգնէր:
Զանձն իւր 'ի մեծ վըշտէ պահէր,
Միշտ 'ի բարին մեզ թելադրէր:

Տիւ ըզգիշեր յաւէտ գործէր,
Եւ զտիւն անդուլ անցուցանէր.
Զաչերս յառէր յաւէտ 'ի լոյս,
Զմտաւունս շարժէր 'ի գործ պիտոյս.
Իբր զհօրանս հօտից այծից
Միշտ յորինէր զչարըս տողից.
Նաւակն կերպիւ կազմէր,
Գեղապաճոյճ յաւէտ գործէր.
Բոլորակ և աղիւսակ
Եւ զմերձագիր տառս հրեշտակ.
Գեղեցիկ և հրաշալի
Եւ պճնազարդ յամենայնի:
Զի ոչ յարդեանըս ժամանակ
Ոք գտանէր նմին հանգունակ,
Արուեստաւոր և գործունեայ
Պըլատիկոս որպէս պիտոյ:
Խոհեմ և հեզ հոգւովըն լի,
Ըստ Անօթին ընտրականի:
Մշտամռունչ հեծեծանօք,
Զցայգն հսկէր միշտ արտասուօք.
Անդուլ և անդադար՝
Որպէս մեղու 'ի գործ յօժար.
Պահօք պնդէր զանձն և ճնշէր,
Զպատրողական մարմինն խաբէր:
Զպէտս իւր յաղքատըն նուիրէր,
Յաւէտ զնոսին մխիթարէր:
Եկին հասին ամքըն ասոյ,
Որ զամենայն մարմին կասու.
Նա արտասուէր և հառաչէր,
Զինքն ընդ նոսին յաւէտ մաշէր.
Պատուիրէր խոհարարին՝
Խնամ տանել միշտ աղքատին.
Ինքն ոգորէր ընդդէմ ասվին,
Սպանանելով զփուըն մարմին.
Պատառ հացիւ զինքըն պնդէր,
Կամ գուզնաքեա պիտոյք զինչ էր:
Խուցն իւր մարտի տեղի լինէր,
Հանդիստն արտաքըս թէ գիպէր.
Նա եւս երկօք յայն գտանէր,
Ի սպաս հիւրոցն ոչ դադարէր.
Եւ թէ անօրէնըն տրտնջէր,
Ինքըն պատրաստ զինքեան առէր.
Զտրտմունջ նոցին միշտ նըհանջէր,
Եւ զյորդորման բանըս խօսէր.
Որովք յաւէտ պատկառէին
Եւ 'ի նոյն գործըն ժրանային:
Ինքըն բնակէր յանապատի,
Գործըն պատմէր 'ի յաշխարհի:
Զօրէն ճպռան ազդողական,
Համբաւ հնչէր միշտ հիւական:
Այսպիսի նախանձ բերէք
Որ յաշխարհի սէր վկայէք:
Այսպիսի գործս առացէք
Որք զկենցաղս յաւէտ ունիք:
Այսպիսի անուն բարի
Առացէք յաւէտ 'ի յաշխարհի »:





»Նակն է, զոր սահմանեաց վարդապետն Գէորգ»։ Որպէս գուշակի Խուլն զեղանական ճշգրտեաց, իսկ Գէորգ զբանսն և զեղանակսն. միաբա՛ն վաստակելով ընդ Գրիգորի, թէ յետ Նորա, ոչ գիտեմ. զի չիք այլ ինչ յիշատակ զմանէ [1]։ — Այս յիշատակ և բանքն Մովսիսի և այլք ևս՝ ցուցանեն, զի ոչ միայն քերականական չարակարգութեան բանից և վայելուչ գրութեան, այլ և ուղղագրութեան և պատշաճ տրոհութեան Նոցին և կէտադրութեանց՝ քաջ հմուտ և հմտացուցիչ էր Գէորգ, մանաւանդ յընդօրինակութիւնս Ս. Գրոց, որպէս թէ ոչ այլք 'ի ծանօթից մերոց մատենագրաց, բայց 'ի բազմահանճարն Սարկաւագ վարդապետէ։ Գտանի առ մեզ Աստուածաշունչ գիրք մի ըստ այսմ քերականական արուեստի գրեալ, յոյժ ճարտար և գեղեցիկ, իբր 20 ամաւ ևեթ զկնի մահուան Գէորգեայ (1319), և 'ի Նորուն իսկ ճշգրտագիծ օրինակէ, որպէս ծանուցանէ գաղափարողն, ասելով. «Ես մեղաւորս Յոհաննէս ըստ կարի զիփա»փագս իմ լցի՝ յանկ ելանելովս. և այս եղև Ներելովն »Աստուծոյ... և զայս ոչ ասեմ վասն գեղապաճոյճ չա»րագրութեանցս, այլ վասն ազնիւ օրինակիս, զոր սուրբ »և երանեալ վարդապետին Գէորգեա ձեռացն չարաշխա»տեալք [2] էին»։

Բազում անգամ կոչեցեալ է Գէորգ՝ րաբունապետ և ուսուցիչ [3] և խրատիչ, այլ ոչ յայտնի պարզապէս թէ էր կարգեալ և առաջնորդ վանիցն, և կարծեմ թէ ոչ. մի՝ զի ոչ գտանի գրեալ. և երկրորդ՝ զի յամի 1285 զայլ ոք կոչէ առաջնորդ՝ ծանօթ բազմագիրն Ստեփանոս Գոյներ Երիցանց [4], ընդօրինակելով զԱստուածաշունչ գիրսն վասն Աստուածատրոյ քահանայի և Խաչատրոյ պատանւոյ, «յաստուածապահ սրբարանս մեծի ուխտիս »Սկեւռայի, ընդ չքով Թևոց աստուածազօր սուրբ Նշա»նիս և սրբոյ Փրկչիս, յառաջնորդութեան Տեառն Մի»նասայ»։ Եւ դարձեալ յետ սակաւ ամաց առաջնորդ կարգեալ Սկեւռայ վկայէ զանձնէ Կոստանդին Բ Հռոմկլայեցին, հրաժարեալն կամ հրաժարեցուցեալ 'ի կաթողիկոսութենէ (1290). զոր՝ Ստեփանոս Ուռպելեան առնէ, Հեթմոյ Թագաւորի համախոհիւքն՝ ոչ միայն մերժեալ 'ի գահէն, այլ և կապանօք արգելեալ 'ի բանտի 'ի Լամբրուն՝ բովանդակ ամս. իսկ Կոստանդին մեղմաբար և գովութեամբ արձանագրէ զՀեթմոյ, յամի 1293, յարծաթի տախտակս, մինչ կայր 'ի գլուխ տեսչութեան վանիցն և Նահանգին։ Աստ լուեալ զգոյժ գերութեան և աւերմանց կաթողիկոսական աթոռոյն Հռոմկլայ, և ըղձութեանցն յաղարտ վարել, 'ի սփոփանս իմն հոգւոյն, կամ յապահովել զմասն ինչ սրբութեանցն՝ որ գտանէր առ ինքեան, ետ կազմել մեծ քառակուսի Պահարան արծաթի Նշխարաց սրբոց իբրև վաթսնից կամ աւելի, դրոշմելով զիւրաքանչիւր անուն խորհրդական բանիւք, և երկայն չափաբան յիշատակարանաւ. զորմէ կարեւոր համարիմ ընդարձակօրէն տալ ծանօթս ուրոյն դրուագաւ, յաւարտ գիտելեացն զվանաց և զվանականաց Սկեւռայ։ — Մեծոգի և մեծահաւատ շինող Պահարանի Նշխարացն զոր և Սրբարան անուանէ ինքն, յետ Գրիգորի Անաւարզեցւոյ վերադարձաւ 'ի գահն կաթողիկոսական, և կալաւ յամէ 1307 ցամն 1323։ Յաջորդ Նորա և համանուն Կոստանդին Գ՝ էր հայրենեօքն Լամբրոնեցի, և կացութեամբն՝ Դրազարկեցի։ — Իսկ 'ի յիշատակեալս 'ի Սկեւռայ՝ առ Նախագրեալն Կոստանդեաւ՝ գտանի և տէր Ստեփանոս Սկեւռացի, վարժեալ և սնեալ յաթոռն Սիւնեաց, որպէս ասէ Պատմիչ աշխարհին, Ուռպելեանն. ուր դարձեալ առաքեալ էր՝ վասն հրաւիրելոյ զարեւելեայս յընտրութիւն կաթողիկոսի՝ յաթոռանկութեանն Կոստանդեայ Բ. և էր հաւանօրէն ինքն Ստեփանոս յայնժամ առաջնորդ ուխտին և Թեմին Սկեւռայ։ — Ի նոյն ամս, 1296, գրէ Պետրոս ոմն քահանայ եղբօրորդի և սան Ստեփանոսի քահանայի, որ էր «յաշխար»հէն Լիկոնացւոց, 'ի Նշանաւոր մայրաքաղաքէն Իկո«նիոյ, 'ի պարկեշտ աշխարհաւարութենէ զևս լաւագոյնն »ընտրեալ, ասեմ՝ զխաղաղականն կենցաղ. եկն և զետեղեցաւ 'ի խումբս սրբազան միաբանելոց, յուխտս »սուրբ. յոլով ժամանակս վարեալ և ծերացեալ 'ի պաշ»տօն և 'ի սպասաւորութիւն եկեղեցւոյս... Որ և զիս »զփցուն գրիչս Պետրոս՝ որբ 'ի ծնողաց ընկալեալ՝ սնոյց »և ուսոյց... Որոյ զկնի մահուանն, որք հոգաբարձուքն »էին կտակին՝ կրատանիին փախեալ և միւս կրտսա»դին և Թորոս, 'ի Մնացելոց գոյից Նորա պատրաստեցին

1 Հնագոյն Շարական Խլկցի ծանօթ ինձ՝ գրեալ է 'ի թուին ԶԾԸ (1309)։ Կոչի յօրինակի միում և Խլա Պողոս շարական։

2 Ճարտար են և ընդօրինակողին Յովհաննու ոչ միայն գիծք ձեռաց՝ այլ և քերական և չափաբան յիշատակքն. յորոց՝ քանզի պակասէ բուն յիշատակարանն, ոչ կարեմ հաւաստել զոր կարծեմս՝ թէ աստէն իսկ 'ի Սկեւռայս գրեալ իցէ մատեանն. իսկ գեղապաճոյճ չարագիր՝ իմանամ զնկարիչն Սարգիս, որոյ ճարտարութիւն տեսցի յետոյ 'ի ստորագրութեան վանաց Դրազարկի. բայց գրեալ է մատեանս վասն վանաց Խորվիրապին, ուր զառաջինն աշակերտեալ տեսաք զԳէորգ. քանզի այսպէս տողէ Յովհաննէս, մաղթելով առ Տէր՝ վասն գրոցն.

« Ժառանգեցո Լուսաւորչին պայազատից,
Դայեկաբար՝ ջամբեցողաց զկաթն իմաստից։
Որոց Նստին՝ ասե՛մ յաշխարհն արևելից,
Ուր ապրեցաւ Սուրբն անվնաս 'ի մէջ աւձից»։

Զայս արուեստ քերականական գրչութեան խնամով պատուեալ Մովսիսի՝ ոչ միայն բանք գրուածոցն և ողբոց ցուցանեն, այլ և առասցեալն 'ի յառաջաբանի իւրոյ Մեկնութեանն ժամագրոց. «Կըր»թութեան յոյժ պէտք են գրոց սրբոց և Ներկուռ վերծանութեան, »այլ և արտաքնոց ևս տեղեկութեան զուգաւորութեանցն, և բա»յիցն և բառից, և ճանաչող միտս ունել, զի կարող լինիցի ընտրու»թիւն առնել խորհրդաւոր բանիցն». և այլն։ Եւ ոչ միայն Ներակրթեալ յայսմ առ ոտս Գէորգեայ, այլ և ինքնին զայլս երկի կրթեալ, որում հաւաստիս ընծայէ մեզ Նորին իսկ Մովսիսի աշակերտ՝ վարդապետն Գրիգորիս Խառբերդցի, գեղեցկագիծ մատենիւ միով, գրեալ յամի 1314, սատարութեամբ և իւր յատուկ աշակերտի. յորում և ասէ. «Ի գալ վարդապետին Մովսիսի 'ի Կիլիկիոյ բա»զում գրենօք, յորդորեալ և առեալ զմեզ՝ բնակեցաք 'ի Դարա»նաղեաց գաւառն, 'ի լեառն սուրբ և մեծ Լուսաւորչին մերոյ, ամս »վեց»։ Արժան համարեցայ յերկարել զբանքս՝ 'ի շնորհս Գէորգեայ և գրաւոր արուեստին, և արուեստագէտ վարժապետացն և աշակերտաց, յորս մի ըստ միոջէ աւանդեալ գտանեմ զարուեստն ցամս 125, այսու կարգաւ.

Գէորգ (Ա) հետեւող Ս. Լամբրոնեցւոյն
Առիստակէս Գրիչն
Գէորգ (Բ) Սկեւռացին
Մովսէս Վ. Երզնկացի
Գրիգորիս Վ. Խարբերդցի
Մխիթար կրօնաւոր։

3 Յաշակերտս Նորա յիշի և Մարտիրոս վարդապետ յամի 1305։

4 Որոյ ձեռնագիր Երգարան մի ևս պահի 'ի մատենադարանս աթոռոյն Էջմիածնի (թիւ 667)։

» նիւթ և զծախս պիտոյից գրոյս, և հրամայեցին ինձ » Պետրոսի գրել զսուրբ գիրս (Եսայեայ մարգարէի, և » զԹղթոց Պօղոսի. ընդ որս աղաչէ յիշել) և զՍիմոն » քահանայ, որ բազում խնամօք սպասաւորէր մեզ 'ի » գրութեան գրոցս »: — Գտանեմ և յերկրորդում ամին (1297) աւետարան մի գրեալ « 'ի մեծ ժողովարանս Սկե» ռայ, ընդ հովանեաւ սուրբ Փրկչի և մօր իւր Աստուա» ծածնի, և կենսունակ սուրբ Նշանի, մերձ յանմատոյց » դղեակս Լամբրունի »: Սոցին ժամանակակից է և Մարկոս վարդապետ Սկեռացի, որ և գտաւ 'ի ժողովին Սսոյ յամի 1307. և հուսկ յիշատակեալ 'ի տեղւոջս, յամի 1324, Ստեփանոս ոմն դպիր, որ գրէր զվարս սրբոց ոմանց վասն աստուածահաճոյ, գերերջանիկ, անբիծ, աստուածապատիւ, և այլն, ծերունւոյ Աբրահամ միակեցի « յԱնապատ » Սկեռայ, ընդ հովանեաւ սուրբ և փրկագործ Նշանիս, » և սուրբ Աստուածածնիս »: Ցորոց յայտ է զի չէն և բարգաւաճ էր ուխտս, թէ և յամի 1279—80, « Հոռոմոց Թուրքն այրեաց զհռչակաւոր մենաստանն զՍկեռայն », որպէս նշանակէ չարունակող ժամանակագրութեան Սամուէլի Անեցւոյ:

Ցայսոցիկ ամենայն յիշատակաց մենաստանիս, և յայլոցն զանխուլ մնալոյ, կամ դուզնաքէիւ իւիք ծանուցելոց առ 'ի մէնջ, արդ համօրէն վանորէից Սիսուանայ գեբագոյն հանդիսանայ Սկեռայս. որպէս և արժանն պահանջէր այնմ որ պաշտպան ունէր զՍեբաստոսն Լամբրունեցիս, և առաջնորդ' զնոյն ինքն զծաղիկ տոհմին զամենաջողն Ներսէս, և օժանդակս նմին' զականաւոր վարդապետսն Գրիգորեանս և Գէորգեանս:

---

## ԴՐՈՒԱԳ (Գ)

## ՍՐԲԱՐԱՆՆ ՍԿԵՒՌԱՅ

31. Մերթ այսպէս և մերթ Պահարան, կամ Խնբարան և Հանգիստ մասանց կամ Նշխարաց Սրբոց' անուանէ կաթողիկոսն Կոստանդին Բ, հեղինակ նորին, եթէ օրէն իցէ այսպէս կոչել զնա, որ 'ի ձեռն ճարտարաց ետ ձևել, ձուլել, քանդակել և գրել զմեծ տախտակաձև տապանակն' բազմաթիւ սրբոց նշխարակիր, և մի 'ի սակաւուց յանհուն հինից զերծելոց' հրաշակերտ յիշատականոցաց Հայաստանեայցս [1], յոր աքանչանայ այսօր ժողով հնասիրաց Եւրոպիոյ' դիտելով զլուսատիպ պատկերն 'ի հանդիսարանի յօգնահոյլ հաւաքմանցն 'ի հոլլանդեանն Լէյտայ. յետ բազում դարուց թաքնութեան և բազում ևս ամաց յայտնութեան և վերստին ծածկութեան' միւսանգամ 'ի վեր երևեալ 'ի հերուն, և հաշակեալ յայսմ ամի (1883), մինչ զստորագրութիւնս Սիսուանայ յարմարէի: Թողից նախ ինքեան կաթողիկոսին' սկիզբն առնել ծանուցանել մեզ զինչն և զէրբն, հանդերձ այլ ևս դիպուածով ժամանակին. զոր շարահիւսեալ 'ի 104 չափաբան տողս ութոտնեանս, ետ ամփոփել 'ի 43 տողս խիտ առ խիտ տաւիղք կիտուածագործ քանդակեալ միահետ, լոկ կիտովք տրոհեալ, 'ի կուան արծաթեղէն տապանակին' ասպընջականին դաս դաս Սրբոցն Նշխարաց: Արդ այս է գիր յիշատակին, ըստ ուղիղ կամ խոտոր տառագրութեանն:



21. Տես յէջ 111:

Յեւթ հարիւր հայոց թուական:
Ընդ քառասուն ամաց լրման:
Եւս եւ երկուց ի սոյն պայման:
Որչափութ͞ք լցեալ այսքան:
Ես կոստանդին անձն տարտամ:
Որ եմ ծառայ տ͞ն անարժան:
Անեալ եմ ի կլայն հռոմայական:
Ուր մեծ աթոռն եր հայկազնեան:

[1] Փառնկ ծանօթարար Պահարանիս, հմուտն Ա. Կարրիէր, այսպէս խորհրդածէ 'ի ծանօթութեանն, զոր' յիշեցուք յետոյ. « Le monument qui va nous occuper, mérite certainement d'être classé au premier rang parmi les débris de l'art chrétien du moyen âge dans la Petite Arménie. Il semble être unique, et je n'ai rien pu découvrir qu'il fût possible d'en rapprocher. » — A. Carrière.

Յորում գլուխն պատուական ։
Նստիւր ի գահն պետական ։
Հայրն հանուր հայոց լրման ։
Որ ձի գոլով փոխան ։
Յաջորդ գնդին սբ գրիգորեան ։
Լուսաւորչին ըղձայաստան ։
Յորոց սկսեալք ըցմեզ հասան ։
Կաթողիկոսքն սրբազան ։
Որք եւ եղեն ինձ պաշտպան ։
Խնամեալ գթով զիս հայրական ։
Ուր եւ ի վեր քան զիմն արժան ։
Հաւատացաւ ինձ աստիճան ։
Նստիլ յաթոռ այցելութեան ։
Գաւազանաւս հովական ։
Արդ ըստ ածենան յաջողման ։
Ի դեպ ժամու եւ պատահման ։
Բարոյն հեթմոյ արքայութե ։
Որ գիտնական էր սրբազան ։
Եղե յաթոռ վսեմական ։
Սկեւռա վանացս ի հովութեն ։
Եդայ տեսուչ այն մեծի տան ։
Եւ վիճակին իւր սեպհական ։
Այլ երանի թէ աստ վախճան ։
Առնոյր զրոյցս պատմութեն ։
Աւաղ մեծի թշուառութեն ։
Բո(լո)ր ազինս հայկական ։
Ամաւք յառաջ քան զթուական .
Առեալ եղեւ հոռոմկլայն ։
Նստեալքն երբեմն անդ բնական ։
Եղեն վարեալք ի գերութեն ։
Եկեղեցիքն երկնանման ։
Յանհաւատիցն կոխեցան ։

Եւ սրբութիքն ածական ։
Ձեռաւք պղծոց շաւշափեցան ։
Եւ սբ մատեանքն ածաբան ։
Ի նախատինս ցրուեցան ։
Սբ հայրապետքն եւ ողք նորայն ։
Գերեալք յաշխարհն տաճկաստան ։
Վայ եւ աւաղ հազար բերան ։
Ընդ մեծ չարեացս որ մեզ դիպան ։
Փղձկիմ յիշմամբ այնց սրբութեն ։
Յորս եմ սնեալ ի մանկութեն ։
Զոր յար ի միտս իմ նկատմամբ ։
Նստիմ ի սուգ նըսեմական ։
Այլ զեթեղել իմ ի սկեվռայն ։
Ստիպեց փափաք զիս ցանկութեն ։
Գնել զայս մասունս ի հանգըստեան ։
Ի յոյս մեծի ինձ բարութեն ։
Եւ ի սփոփանս այս տրտմութեն ։
Որ միշտ խոցէ զիմ խոհականս ։
Ուստի շքեղ զայս խմբարան ։
Սբ նշխարացս պահարան ։
Կազմել ետու յոյժ հրաշազան ։
Ըստ սրբութենց ճահողական ։
Փորձ արծաթով եւ պատուական ։
Խառնեալ ոսկով բոցանման ։
Պճնեալ ի զարդ զարմանազան ։
Յաւրինուածովք վայելչական ։
Ականակապ ընդելուզմամբ ։
Իբր զտաղտակն ահարոնեան ։
Սբոցս որ աստ հավաքեցան ։
Սբ ոսկերաց հանգստարան ։
Որպէս արժան ինչ բանական ։
Հուչակ սրբոցն յաղթութեն ։

Նշխարքս սբ որ աստ եդան ։
Զորս ոչ արժե նիւթք ամենայն ։
Դեղ են ցաւոց բժշկական ։
Մեծ աւգնականք ազգի մարդկան ։
Սաստաւղք այսոցն չարութեն ։
Կոչաւղք զհրշտակս մեզ պահապան ։
Յորում եւ ես յայս ապաստան ։
Շինեալ պարկեշտ զայս սրբարան ։
Սրբոցն ընձայ հաճոյական ։
Եւ ինձ նշան բարոյ յիշման ։
Նայ եւ իմոցն որ զիս ծնան ։
Եւ բնաւ ազգիս լրութեն ։
Զոր տամ ընձայ նուիրական ։
Փառաց փրկչին տնաւրենութեն ։
Ի տաճարին իւր սրբութեն .
Ի սբ փրկիչն որ ՚ի սկեւռայն ։
Զոր պահեսցե տր ընդ երկայն ։
Աւուր յայնչարժ հաստատութեն ։
Եւ զբոլոր զհայաստան ։
Առցե ի գոգն ծնողական ։
Արդ ես ձայնեմ ձայն ըղձական ։
Եւ բարբառեմ բան մախթական ։
Ի յնթանուրս կարդամ զայս բան ։
Սփռեմ զհայցուածս աղերսական ։
Որք տեսանեք զայս պահարան ։
Հրպլեք ՚ի սբս որ աստ եդան ։
Զի հայցուածովք ձեր մախթական ։
Խնդրուածաւքն աղերսական ։
ԶՀեթում արքայն հայոց ազնեան ։
Թագել ընդ սբ յարքայութեն ։
Եւ երախտեցն որ յիս հասան ։
Առնուլ զվարձս հատուցման ։ ամեն ։

Ահա ծանուցաւ պատճառ և որպիսութիւն նիւթական ճոխազարդութեան Սրբարանին. որոյ կմախք կամ հիմն հաստատուն՝ է տախտակ փայտեղէն, այլ համակ պատեալ ոսկէզօծ արծաթի թիթղամբք, 0,63 Զ. երկայն, 0,35 լայն, և 0,075 թանձր. զբովանդակ կուռնն կամ զթիկունսն ծածկէ արձանագրութիւնն, որոյ տառք են իբրև 0,015 մեծութեամբ։ Յառաջակողմն կամ երեսն ունի դրունս երկփեղկիս. որոց վերին կամ արտաքսագոյն երեսն՝ արդ մերկացեալ ՚ի նախկին պաճուճանացն, ծածկեալ է ոսկէզօծ թղթով, իսկ մէջն արծաթի թիթղամբ քանդակազարդ է և տառագրեալ. և բացեալ՝ երևեցուցանէ երկրորդ զոյգ ներքին դրանց՝ քանդակեալ և տառագրեալ, և յայժմուս սևռապինդ փակեալ մածեալ, թաքուցանելով զներքսագոյն խորանն, զոր յետոյ հետազօտեսցուք։ — Արտաքին դրանցն գլխաւոր պատկեր է Աւետումն Ս. Կուսին. աջակողմեան փեղկն (՚ի ձախակողմն հայեցողին) կերպարանէ, և գրով իսկ նշանակէ՝ զհրեշտակապետն Գաբրիել. յորոյ վերոյ ՚ի բոլորակի կամ մետալի՝ Սբ Յովանէս. ՚ի ստորև՝ Սբ Դաւիթ. ՚ի չուրջ եզերս փեղկին բարձրաքանդակ գրեալ են աստի և անտի պատկերացն՝ բանք պատշաճեալք նոցին. որպէս, Յովհաննու, Ահայ գառն Այ – որ բառնա զմեղս աշխարհի. Գաբրիելի, Ուրախ լեր բերկրեալդ Տր ընդ քեզ. Աւրհնեալ — ես դու ի կանայս. Հոգի Սբ եկեսցէ ի քեզ. ՚ի կողմանս Դաւթի, Լուր դուստր եւ տես — խոնարհեցո զունկն քո։

Ցահեակ փեղկին՝ միջին և մեծ քանդակպատկեր է Ս. Կուսին բազմելոյ յաթոռ անմնար, առ գլխովն գրեալ Մայ–ր Այ, յեզերս շրջանակին՝ Ահավասիկ կամ աղախին տ՟ն — Եղեցի ինձ ըստ բանի քում։ — Ի վերոյ՝ բոլորակ պատկեր Նախավկային, բուրվառ յաջում, և որպէս թուի՝ քար յահեկում, խորագիր ունելով Սբ Ստեփանոս. զեզերբք շրջանակին՝ բան Սրբոյն, Ահա տեսանեմ զերկինս բացեալ եւ զորդի մարդոյ զի կայ ընդ աջմե Այ։ — Ի ներքոյ Ս. Կուսին է բոլորապատկեր Թագաւորին՝ փիլոնաւոր կամ քղամդաւոր, շրջագրութեամբ Հեթում Թագաւոր–Հայոց, ՚ի ձև աղօթականի, որոյ և հայցուածն չորս տող ոտանաւոր գրի զեզերբք փեղկին, բայց սկսանի ՚ի բոլորակի պատկերին, իբրև ՚ի բերանոյ հայցողին, Բարե . . . .

Բարեխաւսեայ մայր այ
Անճառ ծնեալդ ի քեն որդո
Վասն կամաց իւր հաշտելո
Ընդ ծառաիս իւրոյ հեթմո։

— Ի վերին սրանկիւն ծայրս փեղկիցն՝ որք արդ անգիր են և անքանդակ, հարկ է թէ գոյին ՚ի նախնումն՝ որպէս և երևին իսկ ընդ աղօտ հետք ինչ՝ տառատիպք։

Ճոխագոյն ևս են քանդակք և գրուածք ներքին դրանցըն. որոց աջակողմեան փեղկին մեծ քանդակպատկեր է Սբ Գրիգոր–Լուսայվորիչն. յորոյ վերայ ՚ի շրջաբոլորին՝ առաքեալն Սբ Պետ–րոս. ՚ի ներքոյ Սբ Ստուատիոս. ՚ի ձախակողմեան փեղկին հանդէպ Լուսաւորչին է Սբ Թադ–եոս, օրհնաբաշխ աջով. ՚ի վերոյն՝ հանդէպ Պետրոսի՝ երկայնագլուխ և սուսերակիր Սբ Պաւղոս.

'ի ներքոյ՝ նոյնպէս սուսերամերկ սպարապետն Հայոց Սբ̄ Վար-դան։ Ցեգերս փեղկիցն երկուստեք գրեալ են ութ զոյգ տողից երկոտասանոտնեայ չափաւ, որոց առաջնոյն սկզբնատառք կազմեն Հեթում Թգ, երկրորդին՝ Կոստնդին. գրութիւնն սկսանի յաջմէն 'ի ներքին անձուկ եզերաց կամ բարաւորաց, խաչանշան ունելով 'ի վերայն, †, և նշանակելով զՍուրբսն որ 'ի պահարանին.

Հաւրն անեղի եւ անեղակից բանին ծնաւղ..
Եւ բոլորից սրբարարի սբ̄ (մկրտ) աւղ..
Թագավորին երկնաւորին նախ վկայաւղ..
Որք առ Քն էք համարձակ բարեխաւսաւղ·.·
Ւիւթոյ հայցման լերուք նմայ ծիր նվիրաւղ..
Միշտ Սկեւռային խնամաւք լինել անշարժ պա-
հաւղ..
Թախանձելով առ նոյն լերուք կրկին մաղթաւղ..
Տուլ ըզՀեթում յերկար կենաւք հայոց տիրաւղ.·.

Բայուն վերին արքայութե̄ն ունաւղ փականց..
Ով եւ անաւթ կրեալ զՑմ̄ ի մէջ ազանց..
Սբ̄ Թադէոս տվեալ բժիշկ տան աբգարանց..
Որ̄ սբ̄ Գրիգոր նոր առաքեալ հայաստանեանց.·.
Նուիրեմ մաղթանք ձեզ որոց աստ սբ̄ նշխարաց..
Գրողիս ըզձեզ աստ ի հանգիստ պատվոյ փառաց..
Ւ Քէ̄ խնդրել ջնջումն իմոց մեղաց..
Նոյն եւ բոլոր Հայոց փրկիլ ի փորձութեանց·.·

Ի վերայ փեղկից ներքին դրանցս՝ յերկոսին անկիւնս ճակատու պահարանին են սուղ ինչ փոքրագոյն շրջաբոլոր քանդակպատկերք. աջակողմանն՝ փոքր տառիւք գրեալ Հեպերքոս[1]. ձախակողմեանն ոչ ունի կամ ծածկեալ է խորագիրն. իսկ պատկերն՝ ձեւով ճակատուն և բանալեաւն 'ի ձեռին՝ բերէ զկերպարան Ս. Պետրոսի առաքելոյ, մինչ որ հանդէպ Ս. Պօղոսի եղեալ և գրեալն է Ս. Պետրոս՝ 'ի դէպ է լինել այլոյ սրբոյ. և գի և չէր հարկ




22. Ս. Վարդան. Տես յէջ 112։

կրկնել զմի նոյն անձն՝ թուի արուեստաւորին շփոթեալ զանձինս և զանուանս. և հարկ է թէ այն զորով գրեալ է Ս. Պետրոս և բերէ զտիպ իշխանական՝ զետեղելի էր հանդէպ Ս. Հիպերիքոսի, և է հաւանօրէն Սբ̄ն Վարոս. քանզի 'ի նմին ձախակողման նշանակէ վատիկանեան պատճէն վերնագրութեանցս, Սբ̄ Վարոսի մասն։ — Վերագոյն ևս 'ի ներքոյ զարդու ինչ ճակատու պահարանին՝ գրեալ են, աստի՝ Սարգիս, անտի՝ Բագոս[2]։ Ցերկոսին կողս պահարանին մէն ինն բոլորապատկերք են Սրբոց՝ հանդերձ անուամբքն քանդակեալք.

| | | | |
|---|---|---|---|
| 'ի միումն, | Սբ̄ Եսայի (մարգարէ) | 'ի միւսումն, | Սբ̄ Մովսէս |
| Սբ̄ Յակոբոս | Սբ̄ Եղիայ (մարգարէ) | Սբ̄ Անդրէաս | Սբ̄ Սիմէոն |
| Սբ̄ Յուդայ | Սբ̄ Դիոնեսիոս | Սբ̄ Փիլիպոս | Սբ̄ Նիկաւղիոս |
| Սբ̄ Թումաս | Աթ̄աբան | Սբ̄ Բարդաւղիմէոս | Սբ̄ Իգնատիոս |
| Սբ̄ Սիմուն | Սբ̄ Ոսկեբերան | Սբ̄ Շմավոն | Սբ̄ Բարսեղ. |

1 Ըստ վատիկանեան պատճենին, զորմէ լիցին բանք յետ սակաւու միոյ, գրեալ էր Սուրբ Հէպերէիոսի մասն։

2 Ի վատիկանեան պատճենին հանգոյն առաջնոյն յաւելեածով են գրին, Սուրբ Սարգսի մասն. Սուրբ Բագոսի մասն։

Այսչափ ինչ երևի արդ 'ի վերայ հոյակապ Պահարանիս, յորմէ կապտեալ կողոպտեալ են ոչ միայն յիշեալքն և եդեալք 'ի կազմողէն (Կաթողիկոսէն) ընդելուզեալ ակունքն, այլ և Նշխարք Սրբոցն. յորս' որպէս յանուանցն գուշակի' գոյին և չքնաղագիւտք ոմանք, օրինակ իմն Մարգարէիցն. ձեռքն սեղանակապուտք այլայլեալ երևին և զզարդս ներքին և արտաքին դրանցն, յորմէ և ծածկեալ գրուածոց ինչ և տառից եղծեալ. և ոչ այսչափ միայն, այլ և որպէս նախդ յիշեցաւ, բևեռեալ պնդեալ են զներքին փեղկան ընդ ներքսագոյն դիմի տախտակին, յոր անշուշտ հաստատեալ էին յոլովք կամ համօրէն իսկ Նշխարքն. զներքսագոյն զայն երեսս' կապտեալ 'ի Նշխարաց և 'ի զարդուց' առաջի առնէ փոքրացուցեալ ձևանշան արծաթեայ պատկերի (էջ 107) խաչեցելոյն Քրիստոսի, բարձեալ այլովքն հանդերձ 'ի տեղւոջէն' ուր կայր տակաւին և կիսով դարու յառաջ, գուցէ և ոչ շատ ամօք յառաջ. և զորոյ գլխովն գրեալ էր Յս Նազաւրացին Թգր Հր...: Եւ որպէս ծանուցանէ ստորագրութիւն մի[1] յիշատականցիս գտեալ 'ի դիւանս Վատիկանու, շուրջ զետեղեալ էին Նշխարք Սրբոցն և դրոշմեալ անուանք նոցին, այլ յոլովիցն եղծեալ և մաշեալ էին և յայնժամ. երևէին միայն 'ի վերոյ աջոյ խաչեցելոյն,

| | |
|---|---|
| Յովանէս: | Թումաս: |
| Յակոբ: | Բարդաղոմոս: |

'ի յաճեկումն 'ի վերին կողման ոչ նշմարէին տառք. իսկ 'ի ներքոյ աջոյն' երևէին անուանքս.

| | |
|---|---|
| Թումաս: | Յակովիկ: |
| Փիլիփէ: | Մերկերիոս: |
| Ստրատիոս: | Վահան: |
| Վարդան: | Անդրէաս զաւրավար: |
| Արդեմիոս: | Քրիստափոր: |
| Կիրակոս: | |




23. Հերում Բ. Տես յէջ 109 և 112:

'ի ներքոյ աՀեակ բազկին' երեքին այսոքիկ անուանք.

Գրիգոր: Փեփոն: Յակոբ Սրճ: †

Եւ 'ի ստորև պատուանդանի խաչին' միակս այս, Ստեփանոս, որ թերևս ոչ զմեծի Նախավկային, այլ զաւրուեստաւորին նշանակիցէ անուն. զի չիք այլ ինչ նշանակ և վկայութիւն անձին և տեղւոյ շինութեանն, այլ ինձ թուի 'ի ամին 'իսկ նահանգիս Սկեւռայ կամ 'ի Սիս եղեալ, խնամօք երկոցուն այնոցիկ սրբասիրաց, կաթողիկոսին Կոստանդեայ և թագաւորին Հեթմոյ Բ:

Անյայտ է և պատճառ և ժամանակ փոխադրութեան սրբազան Պահարանիս յԻտալիա. արդեօք 'ի նոցին իսկ միանձանց վանացն Սկեւռայ խուսելոց 'ի նուաճմանն Սիսուանայ' յայլազգեաց. եթէ ընծայ առաքեալ 'ի մերոցս պայազատաց' յարևմուտս, կամ թէ 'ի գերութենէ թափեալ: Ոչ է մեզ յայտ և այն' թէ յոր կողմն Իտալիոյ զառաջինն պահիւր, 'ի Հռոմ թէ յայլում քաղաքի. բայց յայտնեցաւ 'ի մերում դարու ժամանակի, և նախ 'ի լոյս եհան մերազնեայ պաշտօնեայ մի Սարտենիոյ կամ Բրեմոնդի թագաւորութեանն, Պր. Աստուածատուր

[1] Ոչ է յայտ ժամանակ գրութեան սորին, որոյ գրիչ ոչ է յաջողեալ քաջ ճշգրտել զբնագիրն, և սխալէ բազում ուրեք: Խորագիրն կամ սկիզբն գրուածոյն է, In tergo Arculæ Sanctarum Reliquiarum hæc rei gestæ narratio sic armenice inscripta legitur. Այսպիսի խոբագրօք իւրաքանչիւր մասանց Պահարանին զոր Arcula (տապանակ) անուանեաց, կարգէ զհայերէն գրուածն, առանց թարգմանութեան, և զներքսագոյն կողմանն այսպէս. In fundo item Arculæ sub signo Christi Crucifixi, insitæ sunt Reliquæ, et Sanctorum qui hic adscripti sunt, et aliorum complurium, quorum nomina nos latet, quod vel attrita, vel consumpta penitus est argentea lamina in qua invisa erant, etc.

Փափազեանց, տեսեալ յամի 1828, 'ի վանս ուրեք Դոմինիկեան կրօնաւորաց, յանուանեալ տեղւոյն Bosco, (Անտառ), մերձ յԱղեքսանդրիա քաղաք յիշեցելոյ Թագաւորութեանն. և ստուգեաց՝ զի մենաստանդ շինեալ էր առ քահանայապետութեամբ Պիոսի Ե (1566–72), որոյ և շնորհեալ էր տեղւոյս այսմիկ բազում մասունս և սպասս սուրբս, ընդ որս համարելի է և Արբարանս այս Սկեւռեան։ Զպատկերսն գծագրեալ և տպագրեալ էր Փափազեանն, իսկ զյիշատակարանն և զամենայն արձանագրութիւնսն ետ տպագրել 'ի վանս մեր 'ի Ս. Ղազար, յամին յիշեցելոյ (1828, 'ի 6 ապրիլի). պատրաստելով և առանձինն իտալերէն լեզուաւ զստորագրութիւն նորին, և զայլ ինչ հայկական աւանդից, և պահէր 'ի ծածուկ, դիպողագոյն ժամու ակն կալեալ 'ի հրատարակել. զնոյն և գրողի բանիցս պատուիրեաց՝ մի 'ի վեր հանել, յորժամ դէպ եղև ինձ տեսանել զնա (յամի 1853) 'ի Դուրին մայրաքաղաքի Բիեմոնդի, և ընդունել 'ի նմանէ զօրինակ մի պատկերացն։ Յետ վախճանելոյ նորին անդ՝ և գրուածոցն աւանդելոյ յարքունի մատենադարանն, իսպառ անյիշատակ մնայր բաղդ չքնաղին Պահարանի. որ և թուի 'ի փակել մենաստանաց և 'ի ցրուել միանձանց Իտալիոյ՝ անկեալ 'ի ձեռս զօշաքաղից, կապտեալ և կողոպտեալ 'ի զարդուց. իսկ նշխարացն սրբոց թերևս 'ի նոյն իսկ 'ի կրօնաւորացն բարձեալ, առ 'ի չըմատնել 'ի ձեռս անսուրբս. յորոց՝ սակաւ ամօք յառաջ (1880) թափէ և գնէ հարուստ հնասէրն Պազիլեւսքի (Basilewski) 'ի Բարիզ. և ըստ զարմանալի իմն զուգադիպութեան, այն ինչ աւարտեալ էր իմ զստորագրութիւնս Սկեւռայ, եհարց զիս Ա. Գարրիէր (A. Carrière) դրապետ Վարժարանի Արևելեան լեզուաց՝ Բարիզու, (ուսուցիչ կարգեալ հայերէն լեզուի յետ + Տիւլորիէի), զվանաց Սկեւռայ և զյիշատակարանէ Պահարանիս, ծանուցանելով զգիւտ նորին, զորմէ և հանդերձեալ էր գրել տեղեկութիւն, հանդերձ փռանկ թարգմանութեամբ յիշատակարանին Կոստանդնի, և առաքել ընդ այլոցն գրուածոց 'ի ժողով Հնասիրաց, գումարելոց յայսմ ամի (1883) 'ի Լէյտայ քաղաքի Հոլանդիոյ. և տեղեկացեալ մեր փոխադարձաբար գիրացս, նա հրատարակեաց զիւր գրուածն մակագրեալ, Inscriptions d'un Reliquaire arménien, de la collection Basilewski, publiées et traduites par A. Carrière, 'ի մատենին Mélanges Orientaux, զոր հրատարակեցին վարժապետք այնր ուսումնարանի լեզուաց, (յէջս 169–213), և տարաւ առ ժողովականսն 'ի Լէյտա։ Ի նոյն աւուրս և գիտնական վերատեսուչ մատենադարանին Դուրինու՝ Վինչենցո Պրոմիս, Vincenzo Promis, յերիւրեալ հրատարակեաց զպատրաստեալն 'ի մերոյս Աստուածատրոյ Փափազեանց ծանօթութիւնս և զպատկերս պահարանին, 'ի կարգի յիշատակարանաց արքունի Ճեմարանի քաղաքին, այսու մակագրութեամբ. Reliquario Armeno già esistente nel Convento del Bosco presso Alessandria in Piemonte. Brevi cenni di Vincenzo Promis. 1883. Յետ որոց ահաւադիկ հրատարակի մերս այս մերայոցս, իբրև առաջնոյս յետնորդ եղելոց կամ երևեցելոց. հանդերձ պատկերաւ դռնակաց Արբարանին, զոր ետուն լուսագրել յիշեալ վարժապետքն, և հաճեցաւ տպագրողն՝ Էռնեստ Լըրու՝ (Ernest Leroux) տալ և մեզ օրինակս՝ որչափ կամեցաք։ Պատկերն՝ որպէս գուշակի 'ի վերոյ նշանակեալ չափուցըն՝ իբրև երրորդ մասն է մեծութեան բնականին, զորոյ իսկական չափ ցուցցեն երկոքին պատկերքն Վարդանայ և Հեթմոյ (յէջս 110–1). իսկ Խաչելութեանն՝ զոր 'ի գծագրելոյ Փափազեանին հանաք՝ փոքրագոյն ևս է քան զլուսագրեալսն։ Նոյն համազգիս մեր ձեռահանեալ էր թրծեալ թղթով և զերկու տողս 'ի սկզբանէ յիշատակարանին Կոստանդեայ, 'ի ցոյց ոտպխութեան և չափու տառիցն քանդակելոց, և աւանդեալ մեզ 56 ամօք յառաջ։ Եւ մեք փափագեմք՝ 'ի հրատարակելս զայսոսիկ յիշատակի արժանի համարել զնա, իբրև զմի 'ի բանասիրաց և քաղաքագիտաց հայազգեաց, որ մեծարոյ և պատուական գտաւ յարքունիս և 'ի յարկս օտարաց, յորոց միջի և հանգչին արդ նշխարք նորա 'ի հողս Դուրինի. համարեսցի նմա այցելութիւն և այս դուզնաքանութիւն։



24. Տես զՄեկնութիւնն յէջ 87.

32. Մինչև հեռացեալ 'ի ցանկալի սահմանաց Լամբ֊
րունի և Սկևռայ, պահանջէր սրժանն մանրախոյզ եւս
աչօք շուրջ նկատել քննել, թէ հնար է, զամենայն հետս
հոգևորի նորին վեհագունի անձին և որոց 'ի նոյն յարե֊
ցան և հետևեցան. հաւանեալ՝ զի զատ յերկոցուն սրբա֊
վայր կայանիցն, 'ի վանացն ասեմ և յանապատէն Սկե֊
ռայ, հարկ էր և այլոց նմանաշնորհ կայարանաց լինել առ
նոքօք, այլ և կուսաստանի կամ հաւատաւորաց վանաց.
ուրանօր թերևս եկաց մայր մեծի Սրբոյն՝ Շահանդուխտ,
ըստ վկայութեան ժամանակակից գրչին՝ Սամուէլի,
« Կրօնաւորեալ 'ի ձեռաց որդւոյ իւրոյ՝ սուրբ Հօրս, եր֊
» կու դստերօքն՝ Շուշանաւ և Տաղիպայիւ, որք նորին
» ճգնոց շաւղացն հետևելին. զի մխիթարեսցին 'ի կեանս
» զաւակաց իւրեանց և եղբարց. և սոքօք՝ ընդ նախահան֊
» գուցեալսն փրկեսցին յիշխանութենէ խաւարի, և փո֊
» խեսցին յարքայութիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիս֊
» տոսի, 'ի մասն վիճակի սրբոցն՝ 'ի լոյսն և 'ի յարազուարճ
» խնդութիւնն »: — Եթէ այս ընդ կարծեօք, անկար֊
ծիս է նախընտիր վայրի կացրդոց և հրահանգաց Սրբոյն՝
մերձ գոլ 'ի Սկևռայն, « այլ 'ի մէջ լերինս յամայացեալ
» տեղիս... և կոչէր Անապատն (այն իւր) բնակութեան՝
» Աստուածածին Սաղրուի, 'ի հոսանս գետոյն ժխռա֊
» կրայ, և մերձ նմին տաճար Սրբոյն Գէորգեայ. յորում՝
» յանձուկ սենեկի՝ 'ի գիշերի և 'ի տուընջեան անհան֊
» գիստ էր յընթերցումն. և միայն կատարէր զգործ սրբոյ
» պատարագին պաշտաման:.. Ընդ հոգևոր դաստիա֊
» րակին իւրում Յովհաննու՝ ելեալ մնայր 'ի միայնու֊
» թիւն. և քաղցր էր նմա այն քան զամենայն հեշտու֊
» թիւն »: Աստանօր դարձեալ և յետ ձեռնադրութեանն
յեպիսկոպոսութիւն և երթալոյն 'ի Կիպրոս, 'ի կատա֊
րումն ուսման հելլէն լեզուի և հռետորական վարժից,
յորժամ մայրն և եղբարքն « ածին վերստին անտի բռնու֊
» թեամբ, և ծանուցեալ թէ ոչ կարէ հեռանալ, ել դար֊
» ձեալ յառաջին իւր անապատն կոչեցեալն Սաղրու, յո֊
» րում զանձուկն ունէր սենեակ, և զդաստիարակ հոգևոր
» հայրն իւր Յոհաննէս՝ բնակեալ 'ի տեղւոջն. և անդ
» հաւաքեալ զամենայն աստուածային գիրս, արգելաւ
» 'ի տեղւոջն ամաց ժամանակ. և կայր ընդ մարմնոյ և
» բանիւ Աստուծոյ... պաշտէր 'ի տէրունական աւուրս
» զգոհութիւն սրբոյ պատարագին խորհրդոյ, և յայլ ա֊
» ւուրս մնայր յառանձնական սենեակն՝ յընթերցումն և
» 'ի գրութիւն և յաղօթս զբաղեալ: Իսկ հոգևոր հայրն
» իւր և դաստիարակն Յոհաննէս՝ 'ի նստելն երբեմն եր֊
» բեմն առ նա, քննէր զմիտս սաղմոսացն, և 'ի լուծա֊
» նելն՝ աղաչէր գրել զնոյն և թողուլ 'ի պէտս օգտի զկնի
» եկելոցն: Յայնժամ ըստ կամացն Աստուծոյ և ըստ հնա֊
» զանդութեան խորհողին՝ սկիզբն արարեալ գրել ըզ֊
» քննութիւն երգոց սաղմոսին, 'ի շրջանս աւուրց ամաց
» իւրոց քառնևվեց թուոյ, և թուականիս ՈԻԷ, և կա֊
» տարեալ 'ի քառնևինն ամի »: Տեղիս այս առաջին խոր֊
հրդարան և ընծայարան ծննդոց մաքրական մտաց Լամ֊
բրոնեցւոյն՝ չէ մեզ այլուստ ծանօթ, բայց հաւանօրէն
է նոյն՝ ուր յամի 1215 Գրիգոր մեծահռչակ գրիչ՝ սկսաւ
գրել աւետարան մի, և 'ի միւսում ամին կատարեաց 'ի
Տարսոն ընդ հովանեաւ եկեղեցւոյ Ս. Նախավկային.
գաղափարող յիշատակարանին ընթերցեալ է զանունն՝
« 'ի սուրբ ուխտին Սողրոյ կոչեցեալ »: — Նոյն և մի թուի
Անապատն Սաղրուի և Անապատն Ս. Գէորգ, ոչ միայն
զի վկայեաց Սամուէլ զեկեղեցի սորա հուպ յանապատն
լինել, այլ և նոյն ինքն Ներսէս 'ի նոյն ամս (1179) գրէ 'ի
յիշատակարանի թարգմանութեան գրոց մեկնութեան
Յայտնութեանն Յովհաննու, եթէ յետ աւարտելոյ զայն՝
գործակցութեամբ Կոստանդեայ մետրապօլտին Յերա֊
պօլսի՝ 'ի Հռոմկլայն, առեալ եբեր և օրհնեաց « քեր֊
» թողական արուեստիւ՝ 'ի յապահով անապատս Ս.
» Գէորգ, 'ի մէջ լերինս Տօրոսի, որ է 'ի Գաւհ Կիլիկիոյ
» և 'ի սկիզբն Պամփիւլեայ »: Այսու բանիւ աներկբայ
ազդէ խնդրել զտեղին յարևմտակողմն Սկևռայ և Լամբ֊
րունի, ընդ մէջ սորա և բարձրաբերձ լերանցն: Այն
զանխուլ նուիրական բարձունք և անձուկք գէորգեան
Անապատին՝ խանձարուրք եղեն և անդրանկանն և գե֊
րագունի երկանց մտաց քանևչորքամեայ սրբոյ երկտա֊
սարդին, հոգեչունչ Պատարագամատենին, որպէս և գրէն
ինքնին 'ի յիշատակարանի ուրեմն այնր սափերի. « Գրե֊
» ցաւ 'ի թուականիս ՈԻՋ, յանապատս Սուրբ Գէորգ,
» 'ի մէջ լերինս Տօրոսի, 'ի Գաւհ Կիլիկիոյ, և 'ի սկիզբն
» Պամփիւլիայ, 'ի կաթողիկոսութեան Տեառն Գրիգորի
» և յիշխանութեան Հեթմոյ Սեբաստոսի »: — Զայսր
վանաց դարձեալ համարիմ խնդիր յուզեալ յետ բազում
ժամանակաց և 'ի գերագոյն ատենի Քահանայապետին
Հռովմայ, որպէս է հաւու լինել 'ի թղթոյ միոյ Յովհան֊
նու ԻԲ՝ գրելոյ առ Լևոն Դ թագաւոր, 'ի 28 ապրիլի
1326 ամի. որպէս թէ նախորդք նորա թագաւորք Հայոց
շնորհեալ իցեն զվանսն՝ 'ի հաւայթ համանուն վանաց Յու֊
նաց (կամ Լատինաց)՝ Մանգանա (Mangana) կոչեցելոյ,
մերձ 'ի Նիկոսիա Կիպրոսի. որոյ եպիսկոպոս գժտեալ
գոլով ընդ Գերմանոսի աբբայի այնր վանաց, ընծայեցու֊
ցեալ էր զՄակար ոմն, և Լևոն սմա յանձնեալ էր զվանս
Ս. Գէորգայ որ առ Լամբրոնիւ. և սա 'ի ժամանակի ար֊
շաւանաց Թաթարաց՝ ժողովեալ զոպասս տեղւոյն՝ 'ի բաց
գնաց. ընդ որ սրտմտեալ թագաւորին՝ զայլ ոք կացոյց
առաջնորդ. արդ զի այժմ Գերմանոս աբբայ Բարսե֊
ղեանց վանացն Մանգանայ՝ խնդրէր զվաղնջական տուրս
թագաւորացն Հայոց, յորդորէ Քահանայապետն զԼևոն
մանուկ արքայ՝ դարձուցանել զլամբրոնեանն Ս. Գէորգ՝
հանդերձ սպասուքն՝ 'ի Ս. Գէորգն Մանգանայ Նիկո֊
սիոյ[1]: Իսկ ելք իրացն ոչ գիտեմ որպէս եղեն:

Ոչ հեռի 'ի սահմանաց Լամբրոնի յիշի և այլ սրբա֊
վայր մի Ջրվալկայ[2] անապատ անուն, այլ ոչ գտի ծա֊
նօթութիւն ինչ զտեղւոյս. յանձն լիցի բաղդաւորաց քըն֊

1 ...Monasterium Sancti Georgii Lambron ad portum de Lambro prope civitatem Tarcon situm, in regno tuo, ejusdem ordinis per claram memoriam regum Armeniæ progenitorum tuorum, dicto monasterio de Mangana fuit pia liberalitate collatum; quod ex tunc dicto monasterio de Mangana tamquam membrum capiti fuit subjectum, ac consuetum regi et gubernari de mandato dicti Abbatis de Mangana, per monachos monasterii supradicti, etc.

Datum Avinione, III Kalend. Maiis, anno X. (Johan. XXII.)

2 Ոչ յիշեմ ուստի զայս գտեալ. բայց մերձաւորութիւն Լամբ֊րունի որոշէ զսա 'ի Շըվևկի գեղջէ որ 'ի սահմանս Ջեթունի:

գրերդս զայս, զոր կոչէ *Լեւէ*, Lève, ուր և Գարաման իշխանն կարգեալ էր բաժտուն, և յանձնեալ 'ի Ցոյն մի, որում տուեալ երկուս (տուգադ) դահեկանս՝ ետ բանալ զպահակն և էանց։ Ցետ քառասնից եւս ամաց 'ի մարտընչել Օսմանեանց ընդ Գարամանն, Մուստաֆա որդի աշխարհակալին Մէհէմմէտի Բ և Աճմէտ փաշայ՝ պաշարեցին և զամուրս զայս բերդ, զոր ժամանակակից ճանապարհագիր Վենետկեցի կոչէ քաղաք քաջամուր. Una città fortissima nominata *Lula*. պահապանքն քանզի անփորձք էին որոտմանց հրետից, պակուցեալք՝ անձնատուր եղեն, և խոշտանգեցան 'ի Մուստաֆայէ. որոյ կարգեալ անդ այլ պահապանս՝ մեկնեցաւ գնալ յիկոնիոն [1]։

Առաջին տեղի յայնկոյս պահակին՝ յառաջ քան զժամանելն յԱռակլի, յիշէ նոյն ճանապարհագիր՝ բերդ մի Ասերս անուն (Asers), խեղաթիւրեալ անուն որպէս նախագրեալն Լուլուայ. և թուի ինձ մի 'ի գլխաւոր և մեծիշխան բերդորէից աշխարհիս 'ի պայազատութեան մերազգեացս, և հանգոյն առաջնոյն՝ 'ի Ցունաց բիւզանդացւոց մնացեալ. այն է բերդն Ասկուռաս, յաճախ 'ի հոլովականն գրեալ Ասկուռասոյ՝ 'ի սակաւ յիշատակս։ Զուգադէպ գտանի սա Պապեռոնի և Լամբրունի, նախ քան զԻուբինեանս՝ ունակութեամբն և բնակութեամբ 'ի Հայազարմից Նաթանայէլեանց, ոչ գիտեմ յորմէ՞ գաւառէ Մեծաց Հայոց գաղթելոց, միայն զի յարեւելից կողմանէ առին, ուստի և Հեթմեանքն. և հանգոյն սոցին յարեալք 'ի Ցոյնս և ապստամբք նոցին. վասն որոյ և նիզակակցեալք ընդդէմ Թորոսի Բ [2] 'ի պատերազմին Մամեստիոյ, և գերի վարեալք 'ի նմանէ ընդ Օշնի և ընդ զօրավարացն Ցունաց, և ըստ նոցին օրինակի փրկանաւորեալք։ Ոչ յիշին զարմք Նաթանայէլեանց, այլ հանգոյն Ապլղարիպայն երեւին նուազեալք, և Հեթմեանց պայազատեալ զտեղին. որոյ տէր 'ի սկզբան թագաւորութեան Լեւոնի՝ էր Վասակ հայր Կոստանդնի արքայահօր, անդրստին 'ի 1165 ամէ. զատ յայսմ նուազէ՝ 'ի պատմութեան յիշի անագան ուրեմն յամի 1316 այլ տէր Ասկուռասոյ՝ Սմբատ մարաջախտ, որ էր միանգամայն և տէր Պինակ բերդի։ Զսա եւ՝ քանզի միանգամ եւեթ յիշի հարեւանցի՝ և անծանօթ է մեզ դիրք, յիշատակեալ աստանօր՝ յանձն առնեմք ապագայից քննութեան։

34. Դարձ արարեալ յարեւմտից սահմանաց Լամբրունի՝ յարեւելակողմն, անցցուք 'ի ձորոյ գետակի Նորուն (Գալէսու)՝ յասպնջականն իւր գետն Տարսոնի, այն է Կիւդնոս, որոց խառնուրդք չեն շատ ինչ հեռի 'ի մեծէ բերդէ աստի. և իբրև փարսախաւ եւեթ 'ի Հս. Եւ. նորին է փայտաշէն կամուրջ մի 'ի վերայ գետոյն, աստանօր Չէհէննէմ տէրէսի կոչեցելոյ, վասն դժուարագնաց ձորոյն. այլ վասն գեղեցկութեան ստորին կողմանցն՝ յոմանց Չէննէթ տէրէսի (Դրախտաձոր) անուանիւր, առընթեր ունելով ջրաղաց մի՝ կալուած դենպետին Տարսոնի, և կոչի Գարիզին? կէչիտի։ — Ցոյժ նկարագեղ են վայրքն, ջուրք պայծառ և կարկաջահոս, կարմրախայտ ձկանց զեռալով 'ի նոսին։ Աստի ճանապարհ ընդ դժուարակոխ առապարս տանի 'ի Լամբրուն, յորում և աճեն պէսպէս կանաչագեղ ծառք, կաղնիք, չչիք կամ մահլըպիք (Phyllirea), դափնիք և ձիթենիք, ընդ որս և հսկայաձև հերակլիոնք (Heracleum), մարդաչափ կըզիք (Cirsium), և այլ բարձրաձողկ և բարգաւաճ բոյսք։ Այլ զարմանալի քան զսոսա են նախաջրհեղեղեան կամ հնաշխարհիկ բուսոց մնացուածք քարացեալք, յորոց գտանին և մերձ 'ի Լամբրուն. երկրաբանք նման գտին զսոսա քարացելոցն՝ որ 'ի Ստիրիա Աւստրիոյ։

Սակաւուք հեռի յափանց գետոյն է Ֆէքիլէր [3] կամ Պէկլէր քէօյ գիւղ փոքր. բնակիչքն՝ ոմանք խաշնադարմանք են, այլք այգեգործք, ունելով և թզենիս համեղապտուղս յոյժ, և ոմանք գործեն փայտեղէն անօթս և կահս, պատեանս հրազինուց, և նմանիս։ — Զորահովիտ Կիւդնոսի յահեկէն՝ որ է յարեւելից կուսէ՝ անձուկ է և մացառուտ. պուրակք ծառոցն են յաւէտ յազգէ սրատերեւից կամ փշաձեւոց. աջակողմն ընդարձակագոյն է, և ծառք լայնասաղարթք և կանաչորակք, կաղնիք շատ, և սակաւ մայրք՝ անդր քան զբարեբոյս տափարակն Կեավուր պաղչէսի (էջ 79), ուր յոլովագոյն գտանին լիբանանեան մայրք երկագոյնք։ — Իբր երկու մղոնաւ յարեւմտից հիւսիսոյ լճակի միոյ՝ յահեկէ գետոյն 'ի 6300′ բարձրաւանդակի՝ կան աւերակք փոքու բերդի, ըստ եւրոպացի ճանապարհագրաց կոչեցեալ Գանսիդ գալէսի, թերեւս եղծեալ Տանծուտ հայկական անուն, թէպէտ և այսպիսի բերդ չէ մեր գտեալ 'ի գրուածս նախնեաց. մասն մի պարըսպացն քակեալ անկեալ է 'ի խորս գետոյն. աշտարակ մի միայն 'ի հիւսիսակողմն տակաւին կանգուն կայր և երեսուն ամօք յառաջ, և հետք ազուգայի ջրանցից։ Վիճակք գարուց են 'ի սահմանսն, յորս բազում անգամ ճարակին կինճք ապականարարք. գտանին և քօշք և եղջերուք 'ի կողմանքս. տէր վիճակիս կոչէր Հաճի Համզայի, և էին նորա արօտք և ամարանոցք բացագոյն երկու մղոնաւ 'ի հիւսիսոյ կուսէ՝ 'ի բարձրաւանդակում Մէյտան լերին, յ'7600′ բարձու. յորոյ հարաւոյ կուսէ, և 'ի հիւսիսոյ Տանծուտի՝ նշանակի աղբիւր մի փուճար Գոյըկ-տաշիկ? անուն, առ որով խարխալեալ սրբատաշ քարինք յայտնեն հին ազուգայ և ջրմուղով։ — Գեղեցիկ լեռնաբոյսք են անդ, և քրքում սպիտակ և գորշագոյն. 'ի սորս և 'ի գետնափորս արեւելակողմանն՝ որջանան Մշկակատուք (Viverra sarmatica, Civette), և լսի սուէպ կառաչիւն ճերմակակտուց ոսկրկուլ (Choucas) հաւուց. բնաքննիկք գտին ընդ վիմօքն և նոր ինչ տեսակս պատենաթեւ միջատաց։ — Վերոյիշեալ տեղւոյդ այդ ցարդ Տաճիկ անուամբ՝ հաւանօրէն է վայրն՝ ուր յարշաւանս Մանուելի կայսեր՝ Թորոս Բ, « ունելով զկին իւր և զմեծութիւնս գանձուց » իւր, և զիշխանս իւր, զկին և զորդիս և զստացուածս » նոցա, և եկեալ մտանէ 'ի Քարն զոր Տաճիկ կոչեն,

[1] Անճիոլելլոյ. Angiolello, presso Ramusio, II. 66.

[2] Վահրամ վարդապետն.

« Զնաթանիլեանքըն ժողովեալ
Որ յԱսկուռաս էին տիրեալ.
Զի Հայկազնի իշխանք սահեալ
Ցարեւելից՝ առ կայսր եկեալ,
Եւ ընդ նորին լծով մտեալ,
Եւ 'ի նմանէ պատիւ գտեալ. » և այլն։

[3] Քոչի՝ Պէքլէր գրէ և 'ի ձախմէ՝ յեզերց Կիւդնոսի՝ նշանակէ, իսկ Ֆավռ և Մանտրոյ՝ յաջմէն՝ յարեւմտից, և Facular Koï գրեն։

Stæhlina apiculata [1], *որ ունի ցօղուն երկոտնաչափ բարձր և աւելի քան զկթաչափ ստուար. Բոխ բարձրաբլիթ* (Ferula pachylopa) *դեղնագոյն, 3' բարձր, Սերկեւլիճ լումայատիպ* (Cotoneaster Numularia), *Հզօրի վայելչագեղ* (Potentilla speciosa), *Նոր տեսակ մի Քարկոտրուկ* (Saxifraga), *Գաճի կլուլաբեր* (Gypsophila pilulifera), *զոր յիշէ Չիհաչեֆ ընծայելով և զպատկերն. Ճլելեկ ատամնաթերթ* (Silene odontopetala), *Բղնածաբիր կտաւոտ* (Hieracium pannosum), *Ակրկարհա արծաթագոյն, Եղնախոտն, Եղնձամայր, Ծայթրին 'ի ծերպս վիմացն, և 'ի յատակս խոռոչին Գառնամանուկ մեծաջոնակ* (Senecio megalophron), *3' բարձր, այլ և Շրէշ տաւրացի, Իշկորնկան, Ասփուր վայրի, Հազդեղ ֆարֆար* (Tussilago Farfara), *և այլն։*

*Ջրվէժքս այս Կիւդնոսի հռչակեալ են 'ի կողմանս Տարսոնի, և զբաղումս հրաւիրեն 'ի տես և 'ի զբօսանս. յորոց սակի և համբաւեալն զկնաւ այսր դարու ազնուազարմն Պելճիոյօզոյ տիկին իտալացի [2], 'ի հայրենեացն տարագիր՝ շրջելով յօտար սահմանս, եկեալ և 'ի Տարսոն՝ յայց եղ տեղւոյս, յամին 1852, յութ Նոյեմբերի, բազում եւրոպացի ուղեկցօք. յորոց մի ոմն փռանկ երիտասարդ՝ Եդմոնդ Բերոն* (Edmond Peyron), *զրեաց անդէն առ յափս զքերդուածս զայս, զուգախառնելով զյիշատակս մեծի քաղաքին Տարսոնի՝ ընդ սահանաց ջուրցն Կիւդնոսի. որոյ և թարգմանութիւն հայերէն՝ ոչ քաղ հաւատարիմ՝ կարգի 'ի ստորեւ [3].*

Ruines de ta splendeur antique,
Restes d'un temps plus fortuné,
Tarsous! ô cité prophétique,
Où l'apôtre Saint Paul est né;
Il ne reste plus de ta gloire
Que des tombeaux ensevelis;

Tu ne connais pas la mémoire
De tes héros du temps jadis!

Et le temps, de sa main cruelle
Chaque jour à tes monuments
Arrache une pierre nouvelle,
Attache une plante à tes flancs:
Ainsi la nature envieuse
Détruit les travaux des humains,
Pour s'établir insoucieuse
Sur les chefs-d'œuvre de leurs mains.

Elle seule ici peut nous rendre
Le souvenir des jours fameux,
Où l'on vit le jeune Alexandre
Arrêté sur ces bords ombreux:
Quand le Cydnus aux eaux cachées
Par sa fraîcheur sut l'attirer;
Toujours ses deux rives penchées
Dans son cristal vont se mirer!

Sur ces bords les lauriers-roses,
Les orangers aux doux parfum,
Mêlant leurs fleurs fraîches écloses
Donnent un sourire à chacun;
Et plus loin son onde écumante
Roulant sur les rochers fameux,
Se précipite frémissante
À travers l'horizon brumeux!

Un palmier surgit dans la plaine,
Pour achever ce beau tableau;
Et le Taurus étend sa chaîne
Formant un superbe rideau:
C'est un spectacle magnifique
Qui s'offre à nos yeux enchantés,
Et des ombres du temps antique
Ces lieux sont encore fréquentés!

1 *Քոչի*, 273։ *Ի ցանկի բուսացուցակիս մերոյ (յէջ 24) վրիպակ տպագրեալ է* Stochlina, *Ստոկլինա, փոխանակ Ստեհլինա։*

2 Cristina Trivulzio, Principessa di Belgiojoso, *ծն. 'ի* 1808, † *'ի Միլան*, 1871։ *Հաւասար անուանի զտաւ 'ի գրագիտութեան (բազում և պէսպէս գրուածովք յաւէտ 'ի փռանկ բարբառ), և յազատասիրութեան, 'ի ժամանակի անդ ապստամբութեանն իտալացւոց յԱւստրիոյ*, (1848-49), *մինչև կազմել ինքնին և գլուխ կալ գնդի կամաւոր զինուորելոց. 'ի նուաճման Լոմպարտիոյ՝ խոյս ետ և շրջեցաւ յարեւելս, 'ի Կ. Պօլիս, 'ի փոքր Ասիա և յԱսորիս, հաստատեալ զբնակութիւն իւր 'ի կողմանս Վիրանշէհրի, 'ի հարաւոյ Անկիւրիոյ, զորոց և գրեաց ծանօթութիւնս. և 'ի խաղաղելն իտալիոյ՝ վերադարձաւ 'ի հայրենիսն, ոչ դադարեալ 'ի քաղաքագիտական գրաւոր վաստակոց. յորոց՝ զոյգն ինչ նիւթ մերս հաւաքման ընծայէ՝ Յիշատակարան ուղեւորութեանց նորին*, Asie Mineure et Syrie. Souvenirs de voyage, *երկիցս տպագրեալ 'ի* 1859. 1861։

3 *Հրատարակեալ է քերդուածս 'ի Մասեաց Աղաւնի Օրագրի, Ա. ամ*, (1855), *յէջ* 211-2.

*Ո՜վ վաղափուլըն մեծութեանց աւերակք,*
*Երջանկաւէտ դարուց նշխարք պատուական,*
*Մեծըդ Տարսոն, տեսանողաց սուրբ քաղաք,*
*Առաքելոյն Պօղոսի վայր ծընընդեան.*
*Պատառք միայն քո պերճ փառաց վաղեմի՝*
*Թաղեալք 'ի հող և կիսաթաղք երեւին.*
*Քեզ անծանօթ են յիշատակք անձկալի*
*Փառաց բազմաց՝ որ վաղ 'ի քեզըն կեցին։*

*Եւ ժամանակ իւրով անգութըն ձեռօք*
*Զօր հանապազ 'ի շինուածոցդ հոյակապ*
*Քանդեալ կորզէ մէն մի քարինըս նորոգ,*
*Տընկէ 'ի կողմըդ նոր զոպայ ծնգակապ։*
*Զայս օրինակ աՀա բնութիւն նախանձոտ*
*Յաւէտ դընէ զմարդկան վաստակս յանխընայ,*
*Եւ ինքըն անցեալ բազմի անհոգ և անքոյթ*
*Ի հրաշակերտ նոցին արդեանցըն վերայ։*

*Նորա միայն է աստ ածել 'ի հանդէս*
*Ըզյիշատակ ժամանակացն այն շըքեղ,*
*Յորս դեռաբոյսն Աղեքսանդրոս արքայ վէս՝*
*Եկըն եկաց զափամբս այսու վարսագեղ.*
*Եւ զաղտաջուրըն յայնժամ Կիւդնոս գեղածուփ՝*
*Ի զով ալիսն ըզնա ձըգեաց 'ի հրապոյր.*
*Եւ ցանկ երկուց եզերց նորին տունկ և թուփ՝*
*Ի սանորակըն անձնանըկատ գան 'ի ջուր։*

*Աստ դափնեվարդքըն բարձրուղէշ բոցավառ*
*Եւ քաղցրահոտ նարընջենիք խուռնախիտ՝*
*Դեռաբողբոջ խառնեալ ծաղկունս ընդ իրեար,*
*Վառեն ըզդէմըս տեսողացն 'ի ժըպիտ.*
*Իսկ 'ի բացէ ալիք նորին փըրփրադէզ՝*
*Թաւալգլոր ընդ թուխ պարխս արատոյ,*
*Ի վայր հոսեն քըստմընելով սոսկալէս*
*Մառախլապատ հորիզոնին 'ի ներքոյ։*

*Ամբարձաձիգ արմաւենին 'ի դաշտի՝*
*Յայն 'ի պատկեր յաւելու գեղ բարեբաստ,*
*Եւ Տօրոսի տարածեալ զիւրըն զօտի՝*
*Զըքնաղատիպ անդ յօրինէ առագաստ։*
*Բա՜բէ. քանի՜ վըսեմ են այս տեսարանք*
*Որ հիացեալ աչաց մերոց հարկանին.*
*Եւ վաղընջուց ժամանակացն ուրուականք*
*Դեռ ըզվայրեօքըս թափառեալ տատանին։*

Այլ ինձ ախորժալուր և ազդողագոյն ևս են մերոյս Սիրելւոյ Լամբրոնեցւոյ խորհրդածութիւնք, զոր՝ աներկրայապէս համարիմ ականատես զոլ վայրացս, և թերևս զնոյնս յիշել՝ 'ի գրելն զմեկնութիւն ԺԱ տան ՃԳ Սաղմոսի, 'ի սահմանս յայսոսիկ, առ կարկաջաձայն հոսանօք Ճեռակրի. «Առաքեցեր զաղբիւրս 'ի ծործորս. » 'ի միջոյ լերանց գնասցեն ջուրք։ Աղբիւրս՝ աստ ոչ թէ » միայն զփոքր ակունս ջրոց ասէ, այլ և զմեծամեծ աղբիւրս, որք բազմանալովն՝ գետ լինին. զոսս՝ ամենազօր հրամանն Աստուծոյ առաքեաց ընդ ծործորս քարանձաւաց և ընդ մէջ լերանց։ Եւ այս ոչ փոքր սքանչելիք, այլ մեծի հիացման արժանի. քանզի հայիմք և տեսանեմք, վասն սակաւ ինչ ջրոյ գնացից՝ զայսքան մեծամեծ և բարձրացեալ լերինս պատառեալս, և ընդ » մէջ իւրեանց ճանապարհ նոցին տուեալ. որով յայտնի » ցուցանի՝ թէ արարած է աշխարհս և ոչ ինքնեղ. զի » թէ ոչ էր արարեալ, իւրովի՝ երբ պատշաճէր ընդ այսպիսի լերանցս մէջ ճանապարհ ջուրց. այլ որ ստեղծ՝ » նոյն և պատառեաց զլերինս, և ընդ ծործորս սոցա հորդեաց ճանապարհ ջուրց սքանչելապէս. զի հռչակեսցի » Նախախնամութիւնն »։

36. Ջեն կարի հեռի յաղբերականց Կիւդնոսի և ակունք միջին առաջից նորին, իբր երեք կամ չորս մղոնաւ յարևելից կուսէ, 'ի միջի Գարադաշ և Իւչթէփէ լերանց և 'ի հարաւոյ բարձրագունիցն սարից Տաւրոսի։ Նորագոյն այցելուք Կիլիկիոյ[1] Քիրքիրլի-սու կոչեն զօժանդակս զայս Կիւդնոսի, զոր ծանօթ մեր Քօչի գրէ Քեավիրլի սու, և նշանակէ աղբիւր մի 'ի ստորև՝ 'ի միջոցի Եզան անցից և Ուղտասարի (Տէվէ թէփէ) Թեափիսեքլի? անուն. առ որով և ագաւ ինքն, յ'19 ամսեան սեպտեմբերի, 1853. Նոյն զվերնակողմն գետակին՝ Գափուճուկ սու[2] գրէ, զստորին կողմն՝ 'ի հարաւոյ աղբերն՝ Գափուճուկ Պօղազը սու. երկոքին ևս անուանք քաջ յայտ առնեն զնեղուցս և զկածանս լեռնանցից յարևելից կուսէ ջրոյն, որոյ քարափունք բարձր են իբր 100'։ Ընդ անձուկ ձորախորս այս՝ Եիւրիւք Թուրքք կամ Քուրդք՝ բերէին զրաստուք՝ 'ի վերուստ 'ի լեռնատափից՝ մայր փայտս կտորեալս, վասն որոյ և Թախրաճի կոչեցան, ունելով և համանուն հանգրուան յաջմէ գետոյն, փարսախաւ հեռի յարևելից հիւսիսոյ ջրաղացին և կամրջին Կիւդնոսի։ Ցանձուկս նեղուցին աճեն և թուփք արգելիչք, շքլարք, ուժատուք (Cratægus andrachine), կաղնիք, սոճիք (Pinus Brusia), կնձնիք, դափնիք, և ֆոնտանեսիա (Fontanesia). 'ի խոռոչսն՝ տունկք հովանաւորք։ Ցատակ ձորակին քարուտ է յոյժ և տագնապեցուցիչ գնալեաց, և 'ի մուտս մայրեացն՝ յ' 3500' բարձու՝ այնքան անձուկ՝ մինչև երկուստեք յիրար խառնամխիլ ոստոց ծառոցն՝ յագգէ կաղմխատերև ոստրիա անուանելոց, (Ostria carpinifolia), որոց նմանն գտանի 'ի սահմանս Պաատէն քաղաքի Աւստրիոյ։ Անդր քան զսոսին աճեն 'ի քարուտ գետնի եղևինք կարճատերևք 100' բարձունք, գեղեցկաձևք քան զեւրոպականսն և արծաթափայլք. ընդ որս և ռետնիք անտառացեալք, և մարդաչափ ստուար գեղձիք (Taxus baccata), 'ի ծերպից վիմաց կարկառելով կանգնաչափ բազուկս պաղալիցս. յորս ուրեք ուրեք պատատին և ուռք որթոց վայրենեաց։ Երկայնութիւն խորաձորոյն ձգի ընդ ճանապարհ հնգից ժամուց, ուրեք հազիւ ունելով անցս բաւականս բեռնակիր գրաստու, և վհապատակ խորութեամբն և ծածկութեամբ գեղձեաց երկուստեք քարաժեռիցն՝ անձաւանման երևի։ Սուղ ինչ ընդլայնեալ է արդ կածանս այս 'ի Թախթաճի փայտաբերաց, որք 'ի վերնակողմանց ձորոյն հատեալ մայրս, և զերանս գործեալ չորք Զ. երկայնութեամբ, բառնան մի մի աստի անտի զրաստուցն՝ և վարեն ընդ ծործորն։

Ցայնկոյս գետաձորոյն (յարևելից) և զրեաթէ առ եզերբն՝ հանդէպ Թախրաճի աւանի հաստատեալ է նոբաշէն գիւղ, որ և այսպէս անուանի 'ի Թուրքաց, Եէնիքէօյ. զոյ միւս ևս հանգրուան 'ի հարաւակողմն՝ Կէնսիհ? կոչեցեալ, յանուն գեղջ միոյ՝ որ յարևելակողմն նորին, և յ'3800' բարձու, ընդ մէջ ձորոյս և գետաձորոյ Կիլիկիոյ դրանց, 30 տամբք, ունելով ընդարձակ վիճակս այգեաց և անդաստանաց. առ որովք և 'ի յորդութենէ գետակաց մօրանալով գետնոյն՝ ընծայէ ազգս ազգս եղեգանց, ընդ որս և զվայրի շաքարի. Թանձրախիտ են և պուրակք շոճեաց, լդդենեաց (Lotus arborea կամ Diospyros), ազգ ազգ կաղնեաց և բևեկնեաց. գտանին և սօսիք յարևմտակողմանն։ Գեօղն և հանգրուանն առեալ է զանունն 'ի բերդէ միոյ՝ որ գտանի յարևմտակողմն գետաձորոյս, մերձ 'ի Թախթաճի, ամրացեալ յարևելից կուսէ դարձուածով ձորոյն, և հզօր պարսպօք, յորոց միան տակաւին կիսափուլ շրջափակ պատուարքն, հիմունք հիւսիսային մարտկոցին, և կամարք ինչ որբատաշ վիմօք. այլ ամենայն չէնք քայքայեալք են, ոչ միայն հնութեամբ ժամանակի և բռնութեամբ, այլ և միջամուխ աճելութեամբ կաղնեաց և լդդենեաց 'ի դերբուկսն. որոց յարևմտից կուսէ ընդ կողմն Լամբրոնի տարածի անտառ զղթորաբեր և շարալութ կաղնեաց, և ֆոնտանեսիա՝ 'ի սահմանս երբեմն մշակեալ ագարակաց։ Ի միջի սոցա դադարէին մայրևոր այլազգիքն 'ի փայտաշէն տաղաւարս, ունելով զրաստս փայտակիրս աւելի քան զ120, յամի 1853, յանցանելն ընդ այն Քոչեայ (յ'9 սեպտ.). որ և 'ի բարձունս քարագնաց ուղւոյն՝ տեսանէր անգեղս մեծամեծս սպիտակագլուխս. աւէրին երևել և մեծագունից ևս յափշտակողաց գառնուկս և ուլս քօչից։ — Դիպան դիրք բերդին և ամրութիւն չինուածոյն յայտ առնեն ոչ աննշան լինել 'ի հնումն, 'ի պայազատութեան մերայոցս, և խանգարեալ անունդ Կէնսին՝ թուի ինձ Գանձէ դղեակ, աւանդեալն հանդերձ այլովք տեղեօք՝ 'ի յիշատակարանի Ճաշոցի գրելոյ և աւարտելոյ յ'13 մայիսի 1335 ամի, որոյ գրիչ Սիմէոն ասէ. «Վասն դառնութեան ժամանակիս, և վասն ծովացեալ մեղաց իմոց, » որ 'ի յայսմ ամի ազգն որ կոչի Խարաման՝ մտեալ էր » ընդ երկիրս Կիլիկւոյ, և բազում վնասս գործեցին 'ի » տեղիս տեղիս. և ես պանդխտեալ նստէի 'ի Դղեակն

[1] Ցաւլ. և Մանուրդ յաշխարհացոյց տախտակի։

[2] Ըստ գրութեան Նորա Քափուճիհիք-չէրէ, Kapudschihik Tschere.

» որ կոչի Գաւնճէ, առ ատորատով լերինն Տիւրոսի [1]. և
» գրեցաւ մեամ ինչ 'ի սմանէ անդ, և աւարտն սորա
» եղև 'ի գեղս' որ կոչի Մաւշըէփի, ընդ հովանեաւ սրբոյ
» տաճարիս Կիւրակոսի… Բայց գրեցաւ սուրբ տառս 'ի
» յընչից ճգնազգեաց միանձնեցին Աւետիս, որ է եկեղեցա-
» պան այնմ գեղջի, որ եւ գրել գտա վասն յիշատակի հո-
» գւոյ իւրոյ… և հօր իւրոյ Ամիրշահի… Որ աստցաւ գտա
» 'ի յարդեանց իւրոց, և եա 'ի գեղն Խոզկրտի [2], 'ի յե-
» կեղեցին' որոյ անուն է Մուրբ Հոգի»։ Յառաջագոյն առէ-
վեան ասելով. «Տեառն պաուեր քահանայիցն' բնա-
» կիչք գեղջն որոյ անուն Խոզկրտի յորջորջի, Բարսեղ և
» Յոհաննէս և ընկերք նոցին, և փափագանօք խնդրեցին
» և եառն զրել»…: Յիշէ Միմէոն զրողն և ծաղկով զար-
դարող' զզայր իւր Հօհար. և այլուր, «Զատագող տառիս'
» զգրաւէր կրաւնաւորն զԳրիգոր և զՀարազատ եղ-
» բայրն իւր զՊր. Հերամ զՀանգուցեալն 'ի Քրիստոս»:
և այլն։ — Զատ յայսմ գրուածոյ' ոչ գտանեմ այլ յիշա-
տակ 'ի նախնեաց զերկուսն գեօղիցս և զգեղեցիկն Գան-
ձէոյ, յոր անուն կամէի կոչել զգետն' փոխանակ խորթ և
աղաւաղ անուանն Քիրքիթլի' առ որով կայ. և որ չորիւք
մղոնաւ յԱրև. Հր. նորին և երիւք 'ի հարաւոյ գեղջէն'
խառնի յարեւմնեան առաջ Կիլիկիոյ գետոյն, այսինքն
գետոյն որ առ Դրսամբ և Կապանաւն կուկլակայ։

Ոչ գիտեմ արդ 'ի գետոցս հովտի միճակեցի բարձրա-



26. Հին շինուած մերձ 'ի Փայյասլը գիւղ։

սուրին անտառաւէտ' ասկաւոք հետի 'ի Փայյասլը գեղ-
ջէ, և իբր չորս ժամաւ 'ի Տարսոնէ, յորոյ զագաթան կայ
կամարադաւան հին, բաս աւանդութեանն' շինեալ 'ի մե-
ծէն Կոստանդիանոսէ' յերթալն յաւետ յՅրուսաղէմ.
յայտ է թէ կարևոր ինչ շինուածոյ մասն է. զի աղդոտոյ
սալայատակ անցանէ առ նովաւ, տանելով 'ի Կապանն
Կիլիկիոյ, և 'ի քարաժեռի ուրեք երևի հետևոյ լաւրին
որձան անուանք Մարկոսի Ավրելիոսի։ — Առաջ և անդր
ընդ Հս. Արև. ձգին լեռնալուրր, առ որովք' իբր հինգ
ժամաւ հետի 'ի Տարսոնէ' ակիզբն է զինուորական ճա-
նապարհին, զոր եբաց Իպրահիմ փաշայ եգիպտացին
մօրսին, և որ մուծանէ 'ի կիրճ մի լերանց խորին և
անձուկ, յորոյ բարձունս երևին Թոսագորգ հին բերդո-
րէից. մին կոչեցեալ Իանիծա-զղյա, միւսն Զաղարճըղ,

1 Այսպէս գրեալ էր յօրինակին' փոխանակ Տաւրոսի։

2 Թերևս երկիցս եւ Խոզկրտի զրի, այլ ուղիղն Թաք Խոզկերտ։

և միւս ևս Քիւչիւկ-գալէ (փոքրիկ բերդ). յորոց ընդ Հս. Եւ. երկու կամ երեք ժամուց ճանապարհ է ցՄէգարլըգ խան:

37. Գետակ Պաճակին Կիլիկիոյ ընդարձակագոյն ունի ձորահովիտ քան զԳանձէոյն, և զատանի 'ի նմանէ երկարաձիգ քամակաւ լերանց, որք 'ի բարձրագոյն սարից Պուլղարայ առ փոքր փոքր զիջանելով հասանեն 'ի նեղուցս անցիցն. և են դոքա՝ բարձրն Խըշ-բէփէ (10,000') 'ի Հր. գերածայրեալն Մէտտէսիգի, Պուզ տաղ (Սառնասար), Քէչի պէլի, 8600', Գար-կէօլիւ (Ձիւնալիճ) 8800',



27. Կառն ստևուննակ. Acanthus hirsutus.

Պաշ օղուզ, 7200', որ յայտ առնէ ունել առ երի նեղ և երկայն անցս նման խողովակի. Նշանակի անդ և Հանգըրուան կամ իջեւան. Տէվէ բէփէ (Ուղտասար) 7100', Խնէկ բէփէ (Կովսար). և ապա միջին գահաւանդն անտառավայր եղեննեաց և սեաւ սոճեաց մինչև 'ի սահմանս Գանձէոյ: Ոչ նշանակի առանձին անուն գետոյս, այլ զի 'ի սկզբան Մէնէվշէ սու կոչի, այսինքն Մանուշակի ջուր, նոյնպէս և զբովանդակն կոչեսցուք Մանուշակ գետ. որոյ և աղբերակունք նշանակին [1] յ'8200' բարձու ընդ մէջ Խուշթէփէի յարևմտից, Ծակքարի (Տէլիք գայա) յարևելից, և բարձուն Արփալը-գայա (10800') 'ի հիւսիսոյ: Անուանք լերինն՝ Սառնասար թարգմանելոյ, Ձիւնալիճն (Գար կէօլիւ) յ'8800' բարձու, և որ յելից սոցին յանկեան երկուց վտակաց աղբերականցն՝ Գարլը պօղազ (Ձիւնակապան) լեռնանցք, թէպէտ ոչ յոյժ բարձրաբերձք հաւուին, այլ յայտ առնեն այնպիսի վայրս ցրտասառոյցս ունել առընթեր, որպէս և նշանակին իսկ անդ յաւերժական սառամանիք 'ի տեղագրացի բնագրին Քոչեայ: Բայց հանգրուանն Գարլը պօղազ մաղարա 'ի խորուխ կայ իբր 'ի 6300'. յոյժ ապառաժուտք և դժնեայք են սահմանքն և սակաւարոյսք, յորոց բարձունս ճարակին քօշք և այծեմունք: Ի ժամանակի քննութեան Քոչեայ յամի 1853 (յամսամուտն յուլեայ), 10 վրանք էին սևամորթք 'ի տեղւոջս, ընդ տեսչութեամբ գլխաւորի հովուացն՝ Հասան Աղա կոչեցելոյ, և նոյնչափ ևս քարայրք գեղերբ գոգոյ միոյ ջրժողովի, ուր և կաթնատունք նոցա, և 'ի մասս նոցին կային շունք 'ի զգուշութիւն՝ ոչ գայլոց միայն, այլ և երկայնաճիրան և սրացուրն արջուց: Թէպէտ և մարգագետինն ճարակեալ էր 'ի հօտից, և սպառեալ աճեցուն բուսականաց, այլ և 'ի մնացորդաց անտի գուշակիր յոլովութիւն ալպեան բուսոց և ծաղկանց. յորս գլխաւորք և առաւք էին գեղեցիկ Կառն ստևուննակ (Acanthus hirsutus), Եբինոս (Ebenus), և յերեսս քարաժեռից՝ բարձանման պատեալ Քարկոտրուկ. առատ երևէր և կովկասեանն Շրէշ (Eremurus Caucasicus) մարդաչափ բարձր բնով, դեղնակարմիր ծաղկամբք, զորոյ տակս ցամաքեցուցեալ տանին 'ի վաճառ 'ի Տարսոն: Յետ վեց ամաց միւսանգամ (1859) եկեալ այսր բուսաբիրին՝ 'ի կանխագոյն եղանակի (5 յունիսի), եգիտ ըստ փափագանացն յոլովագոյն ևս տեսակս բուսոց և ծաղկանց: — Կիսով փարսախաւ 'ի հիւսիսոյ Գարլը-պօղազի են Դաւօղուզ զափուսու (փայտեայ փող կամ խողովակ) կոչեցեալ անցք, 8100' բարձր. յոր գնալով բուսաբանին՝ զառաջինն ընդ դժուարուս կածանն, որ յետոյ դիւրանայ, եգիտ 'ի սահման ձեանց գեղեցիկ նորատեսակ դեղնագոյն մեխակ մի, Ցակինթ ձիւնական (Գար սիւմպիւլի) կոչեցեալ յայլազգեաց, և 'ի պատառուածս բարձանց քարաժեռից՝ զնորատեսակ գեղադէշ փոքր Առիւծթաթիկն և զՑուշոյ-ծաղիկն, զորս 'ի ներածութեանն յիշեցաք (յէջ 18), և զհագուագիտ ճաղճղուկն ճերմակախայտ (Gnaphalium leucopilinum): Առ աւլերբ միով յ'8000' բարձու եգիտ կապուտակ Կովացնծուկ (Primula), մեծածաղիկ Սփռուկ (Spergula) [2], և խիտ առ խիտ պրտուս. առ ակամբք Մանուշակ գետոյ ետես կապտագոյն Պարարտուկ (Pinguicula, Grassette) և խաժագոյն Օձախստոր զարնայնի [3]. ընդ որս աւելի քան զքառասուն տեսակս ևս բուսոց հաւաքեալ թուէ բուսաբանն, 'ի խաղըս քանիւ չափ աղբերց, 'ի մերձակայ սահմանս և 'ի քարածերպս: Իսկ յազգէ միջատաց՝ սակաւս եգիտ նորատեսակս, և սակաւագոյն ևս մողէզս: Յազգէ հաւուց՝ մեծամեծ արծուիկք և անգեղք երևին շատ 'ի լեռնավայր-

1 Սուլուան չէօլէ (Ակն ջրոյն) կոչեցեալ ըստ տեղագրոյ տախտակի Քոչեայ:

2 Գերմաներէն ըստ Քոչեայ Natternknöterich.

3 Sommerenzian, ըստ նորին բուսաբանի Քոչեայ:

քըս, և երամք ձիւնակեաց մանր թռչնոց։ — Ի կողմանց աստի ձիւնեղէն լերանց հատանեն ամարանի մեծամեծ թեկորս սառին, մինչև կենդինար և կէս կշռով, և բարձեալ գրաստուց տանին 'ի Տարսոն, ուր երկու բեռն վաճառի 120-140 թուրք դրամոյ (ղուռուշ)։ Ցատկազոյն և կենդանազոյն ևս սեաւք բարձանցս են քօչքն և այծեմունք, որք և 'ի միջի ձեանց դեգերին. ամենայն ուրեք երևին, այլ յոյժ դժուարորսալիք են և երագունք 'ի փախուստ։ — Հանգոյն իմն սոյին դժուարըմբռնելի է և որսկաքաւն՝ ուր-քէքլիկ կոչեցեալ 'ի Թուրքաց, զոր ընդ մէջ Ջիւնակապանին և Այծուկապանին (Քէչի-պէլի) ետես բնախոյզն՝ 'ի սորս և 'ի քիւս բարձրաբերձ քարաժեռից լերանց. այլ և ապլորս վայրիս 'ի բարձրաւանդակս անդ։ — Յ'8000 ոտնաչափ բարձրութեան Այծուկապան լերին՝ է տափարակ մի հողային, արտաչափ տարածութեամբ, որ յեղանակս ծաղկաբերութեան ծածկի շուշանաւ և քրքմով. կանաչանան յանժամ և բարձրագոյն ևս կատարք հիւսիսակողման լերինն։ Արևմտակողմն ընդարձակ բարձրատափ է, 8000′ բարձր, յորմէ ընդ հարաւ կոյս ձգին ձորահովիտք, և 'ի կողս նոցին վրանք հովուաց. 'ի հիւսիսոյ նոցին 'ի կրոյին զանգուածի ամբառնոյ սևագոյն ժայռ հրաբղխեայ։ Ի մարգս Այծուկապան լերին հաւաքեաց Քոչի, (յ'3 յուլիսի 1853) զատ յայլոց՝ գեղեցիկ խարտեաշ Հարսնածաղիկս (Anemone blonda), ոսկեգոյն Թագաւորապսակ, Կակէա տաւրացի (Gagea tauricola), Շահթառակ, խաչաձև Ջիւնծաղիկ (Hermodactylus cruciflorus), Կակաչս գեղանիս (Tulipa pulchella), և սոխս քրքմոյ շատ։ Իսկ ըղհարաւային քամակ լերինն՝ ստոյգ պարտէզ իմն բուսոց կոչէ, յորում առ հասարակ սփռեալ պատեալ էր Զամբուռն վայրի. 'ի քարածերպս՝ Օշնան (Saponaria pumillo), և 'ի խութս կոհակացն՝ Ծնուկ (Ajuga), Վառվռուկ՝ կաքուարոտի տերևաք (Alyssum Serpillifolium), արծաթափայլ Թուփն Congistyla, և Ճլըլեկ ճապաղեալ 'ի խիճս։ Ի կոչտս կոհակացն պէսպէս Խազիրանք կապուտածաղիկք և սպիտակաթելք (Astragalus Pelliger և Ast. Chienophilus), և Արաբիկ առնասպարիկ (Arabis androsacea). յազգէ բարձրացօղուն բուսոց՝ Ոջլադեղն զուարճատես (Pedicularis jucunda), Իշհոտոտ գունագոյն (Onosma versicolor), Եղեսպակք (Salvia Oreades և S. Molucella)։ Ի մարգս՝ ազգ ազգ շրթնաձևից (Labiatæ) անուշահոտ ծաղկանց և կարմրիկ առուոյտն աբեղեան. — առ ստորոտով լերինն 'ի հիւսիսակողմն 'ի գետնի՝ վարդագոյն Ցուրինեակ (Jurinea depressa), և աստղաձև սպիտակ Շնախոտր (Ornithogalum). 'ի խոռոչս ժայռից՝ Արեգնիճ, Ոջլադեղ կոլկասեան, Կոտեմ և Կոտմնուկ և Եղինճամայր տերևաք նման կատուախոտի (Lamium nepetæfolium). 'ի ծմակուտ զօգս ժայռից՝ դուն ուրեք Մանուշակ Թանձրատերև (Viola crassifolia)։ Բազում և այլ տեսակս բուսոց հաւաքեաց Քոչի (յ'3 և 4 յուլիսի), 'ի հուն գետոյն առ Ջիւնկապանաւ՝ 'ի կուշկռաս և 'ի քարաժեռս Գիւլ-օլուգի. որպէս և եօթնևտասն ամաւ յառաջ (1836) բուսաքննեալ էր նորա յայտնիկ սահմանս։ — Ցայսպիսեաց միջի ճարակին ամարանի հոյլք անդէոց, և 'ի սկիզբն աշնայնոյ իջանեն յանտառս մինչև 'ի կէս հոկտեմբեր ամսեան, յետ այնր պատսպարին 'ի փարախս իւրեանց։ Տարեկան հարկ հովուաց է՝ յօդեաց և յայծեաց՝ երկու յերեսնից առ պաշտօնեայ (միւտիր) հոգացող կողմանցն, յորմէ պահապետի Դրանն Կիլիկիոյ հասանէ բաժին 2000 գլխոց։ — Ցազգէ հաւուց ետես բնաքննիչն՝ երկուս տեսակս անծեղի և կաչաղակ յանտառս. սակաւս յազգէ ճնճղկաց, առ նուաղութեան ջրոյ. նոյնպէս և միջատք միայն առ աղբերակամբք գտանէին, զորս տայր նա որոնել մանկտւոյն Հայոց և Թուրքաց։ Գտաւ 'ի կողմանսն և նորանշան տեսակ մի վայրի մկան 'ի քարածերպս[1]։

Առանձինն ձորահովիտ գործէ փոքր գետակ մի՝ Աղաձքէսէ? անուանեալ, իջանելով 'ի հարաւոյ Ջիւնալճին և Պաշ օլուգ կոչեցելոյ 7200′ բարձր կածանի, և իբր մղոնս հինգ խաղացեալ ընդ Եւ. Հր. խառնի 'ի Մանուշակ գետ առ Եղլամ օվասը (Օձադաշտ) անուանեալ տեղեաւ, որ է երկու մղոնաւ հեռի 'ի Հս. Ելից պահակի Դրանն Կիլիկիոյ. և ասի այսպէս կոչիլ վասն խտութեան ծառոց եղևնեաց 'ի ձորահովտին, ընդ որս և մայրք մեծամեծք բարգաւաճեն մինչև 'ի 6200′ բարձրաւանդակին, և գիհիք երկատեսակ։ — Ճանապարհ օձապտոյտ կտրելով զլերինս և զքարաժայռս՝ 'ի միջոցի Ջիւնալճին և միւսոյ ևս Ջիտէմ կէօլիւ կոչեցելոյ, որ է Քրքմոյ լիճ, իջուցանէ 'ի Կապարահատս Կիլիկիոյ, Կիւլէկ-Մադարա կամ Գուշյու Մադարա, յարևելակողմն Ջիարէբ լերին, և նոյնպէս դարձադարձ խոտորկտուր տանի 'ի գետեզրն Մանուշակի՝ հանդէպ Նէտէրէ? առ աղբեր և հանգրուանի, յահեկէ գետոյն, աւելի քան զ5000′ բարձր։ Անցք ճանապարհին առ գետեզերբն կոչի յանուն քարալերին միոյ՝ Իրձէ կէտիք 5000′ բարձր. իսկ լեառն բոլուցն՝ Մատէն-բէփէ՝ 'ի Հր. Քրքմոյ լճակին՝ բարձր է 7300′։ Հանքք կապարոյ պեղեալ զառաջինն յԱւստրիացի երկրագիտաց՝ յամի 1836, յետ ամաց ինչ դադարեցան, և դարձեալ 'ի գործ արկեալ՝ լքան վերստին, որպէս և նշանակեցաւ 'ի Բնագրութեանս. պակասեաց և բնակութիւն տեղւոյն, որ գիւղացեալ էր երբեմն։ — Ըստ բուսաբանական բերոց՝ կարի հարուստ եգիտ Քոչի զերկուսին կողմանս Մանուշակ գետոյն, և բազում հազուագիւտ և անծանօթ բոյսս, յորս և երկու տեսակք Զուածաղկի, (մին Orchis Comperiana Stec), Խառածաղիկ բրդոտ (Ranunculus villosus H.) առ Նէտէրէ աղբերբ, գեղադէշ Նուիճն Դիոսկորիտեան շառագոյն ծաղկամբ, Մատիտեղն վայրի, և Հազարտերևեան մանրածաղիկ։ Ցանտառավայրս՝ Գուռնըֆօրեանն Գունդելիա, զորոյ սերմն երբեմն վարեն փոխանակ զաֆէի, Դափնի բլրցի (Daphne Collina), Գառնամանուկ մեծայօնակ (Senecio Megalophron), Եղեսպակ մեծատերև կապտագոյն, Դաղձն ինչ վայրի (Nepeta)։ Ի զնըշտագոյն տեղիս՝ Մեղրածուծ, Վարդ մատղուկ (Rosa glutinosa), Մեղուամուչկ (Tanacetum) արծաթագոյն, Երինճակ, Անթեմ ոսկեգոյն, և այլք յոլովք։ Ի մերձաւոր սահմանս Կապարհատիցն՝ Անձխոտ (Fumaria Vaillantii),

[1] Die vielen Kinder... brachten verschiedene Insecten und selbst eine höchst interessante in Hohlen wohnende Spitzmaus. — Kotschy, 99.

Բարլադորիա կարճապտուղ (Parlatoria brachycarpa), Եզնալեզու (Anchusa Barrelieri), Ճանդի կարճապտուղ (Scandix brachycarpa), Հզօրի մանրածաղիկ (Potentilla micrantha), Մոխրաթելիկ (Chenopodium Botrys), Տանձի ուռենատերև (Pyrus salicifolia), Սին, Վարդ գեղձանի և այլ ազգ, Սերկևլիճ (Cotoneaster), Քոսքուռկ վեպպեան (Scab. Webbiana), Վերոնիկ արևելեան, Կոտմնտուկ, Սկուտղի արևելեան (Scutellaria Orientalis), Արևուկի արևելեան (Helichrismum), Ջամբուռ (Thymus rigidus), Կանթեղնիճ անպարոյր (Campanula involucrata), Շահոգրամ, Տափկի մանիշագոյն, և այլն: Ի քարալերին Կապարհանիցն՝ Բզրուկ գիհէնման, Նգածաղիկ, Աւազուկ (Arenaria Ledeburiana), Ճլելեկ գետնամած, Գոճամօրու փայլուչ, Կովացնծուկ ականջաւտ (Primula auriculata), և այլն, և այլն: Ցոլով մասն 'ի ծաղկանցս և 'ի բուսոց յիշեցելոց՝ քաղեալ 'ի ընախուզէն յամս 1836 և 1853, ցամաքեցուցեալ պահի արդ 'ի բուսական հաւաքարանի մայրաքաղաքին Վիեննայ: — Ի կենդանեաց սեաւ երևին զվայրօքս կինճք առ աղբերբք Նէտէբէի և 'ի մորխ, և ևս յարևմտակողմն 'ի կաղնուտն:

38. Գրեաթէ զուգահեռական է գետոյն Մանուշկայ՝ յարևելից նորին՝ գետաձորակն Կիւլէք, զոր մարթ է կոչել ընիկ գետ Կիլիկիոյ կամ Կուլլակայ, որպէս արդ կոչի՝ Կիւլէք սու, և 'ի վերնակողմանն Կուսկուրա (ըստ Քոչեայ). ընդարձակագոյն է հովիտ սորին, անջրպետեալ յարևմտեան օժանդակաց Սարոսի՝ երկայնաձիգ ոստովք Հողմոց լերանց (Րիւզկեար տաղ), յորոյ հիւսիսային յարևմտեան պարակից Քօշան լերանց (10,000′), և 'ի Ջէօք կամ Ջէօքէ ? -կէտիք լերանց (10,500′), կամ 'ի ստորոտից նոցին՝ Թուի բղխել. 'ի հիւսիսոյ և յՃլ. Հս. լեռնոտանցն ունելով զհամանուն լճակն Քօշան յ8000′ բարձու, ջրժողով հալից ձեանց, որոյ չերևի այլ աղբիւր և կարի խոր է, այլ ամարանի նուազէ մերձ 'ի ցամաքել. լինին 'ի նմա խեչեփառք կարմիրք մեծաչեայք և Թխաչեայք: Ցարևելից լճակին և 'ի սպառուածոյ լերինն յայնմ կուսէ՝ հատեալ է կածան յանցս ճանապարհի յ'9400′ բարձրութեան, և քերեալ զհիւսիսով լճակին և այլոյ ևս սուղ ինչ մեծագունի լճի՝ Սեաւ կոչեցելոյ (Գարա կէօլ)՝ 'ի հիւսիսային կողս Ջէօքէ քէօփրիւ լերին, տանի ընդ արևմուտս հիւսիսոյ՝ 'ի մեծ կապարահատսն Պուլղար Մադարա, 'ի վերին հովիտս Սարոսի, և դարձեալ յարևմուտս ընդ բովանդակ երկայնութիւն հիւսիսակողման բարձր բարձր լերանցն և հարաւակողման Իշխօձայ օժանդակի Սարոսի, տանի 'ի միւս մեծ բովս Պուլղար մատէնի. իսկ 'ի կապանէ անտի Քօշանայ՝ իջանէ ընդ հարաւ կածան մանուածոյ օձապտոյտ յ'9000′ բարձուէ ց'7000′ 'ի հովիտ Կուսկութայ, յորում խառնուրդք լինին երկուց աղբերահոս վտակաց. առ եզերբ միոյն՝ որ յարևելիցն է՝ կայ ինեվան իբր յ'7500′ բարձու, և մերձ 'ի խառնուրդսն ընդ արևմտայնոյն՝ որ բուն ակն գետոյն ճանաչի, գոյ աղբիւր անուանեալ Կուլլուկ? 'ի 6500′ բարձու. առ որով յամի 1853, 'ի 26 յունիսի, ետես Քոչի ութ վրանս հովուաց, և կանայս լուացարարս. և յայնմ աւուր չորիւք ժամուք յետ միջօրէի՝ ստորճան ջերմութեան էր անդ 20° Րէօմ.: Հանդերձ այլովք եգիտ նա անդ զգեղեցիկ ոսկեծաղիկ Թուփն Մունբիա համագնտիկ (Munbya conglobata) անուանեալ, և Քարկոտրուկ մի յԱյիզոնիա տեսակէ: Սուղ ինչ ստորև գիշերօթեաց նա 'ի բացի. և 'ի միւսում աւուր 'ի խնդիր բուսոց ելեալ 'ի սահմանս ձեան, էանց ընդ կամարաձև բացուած մի սառամանեաց 6-8′ բարձր, 15 քայլ լայն և իբր 240 քայլ երկայն:

Նոյն գիտնական յետ եօթնեկաց ինչ (14 յուլիսի, 1853), վերստին փորձեալ ելանել 'ի լեառն Քօշան՝ 'ի սակս բուսախնդրութեան, ըմբռնեցաւ յուժգին հողմոյ փոթորկէ, որպէս գրէ. «Բազում զգուշութեան պիտոյէր
» մեզ՝ զի մի՝ խլեսցին երիվարքն 'ի սաստկութենէ մըրր-
» կեալ հողմոյն ուժգինս շնչելոյ 'ի խռոչս քարածերից,
» յորոց շատք կարկառեալք՝ ոչ սակաւ ձողաչափ խորու-
» թեամբ գահավէժս վախից և անդունդս գործէին: Ի
» բարձրագոյն գագաթունս անդ ահաւոր յոյժ սաստկու-
» թեամբ հնչէր հողմն, բուռն շառաչմամբն զանընդհատ
» որոտմանց բերելով նմանութիւն: Ցայսպիսում աւուր
» զվերելս 'ի Քօշան՝ յանդգնութիւն մեծ վարկանէին
» հովիւք Կարմրասար լերին: Մեծաւ ճգամբ հազիւ կա-
» րէաք 'ի հարաւ-արևմտեան կողմն լերինն կալ 'ի վերայ
» ոտից. իսկ երիվարքն՝ որք վաղու իսկ կասեալ էին 'ի յառա-
» ջելոյ, ոչ կարէին զկայ առնուլ 'ի բարձունս քամակիլե-
» րինն, 'ի բռնութենէ հողմոյն մղեալք ընդ վախուտն,
» ոչ բաւելով մխիլ 'ի մերձակայ դարձուած ճանապար-
» հին: Ցաւէր, զի անմարթ էր իսպառ և բուսաքաղու-
» թիւն՝ զոր յուսայաքն առնել 'ի դարձի մերում յետս.
» քանզի այնքան բուռն ցնցմամբ շնչէր հողմն ստէպ, և
» այնպէս յանկարծօրէն անկանէր 'ի վերայ մեր, մինչև
» հարկ լինել մեզ բազում անգամ նստել և կռուել 'ի
» քարինսն՝ առ 'ի չլինել Թաւալգլոր: Աւելի քան զժամս
» երկուս մաքառեցաք ընդ բռնութեան մրրկին. որոյ
» մռնչիւնն 'ի բարձանց անտի՝ և յետ իջանելոյ մերոյ
» 'ի ձորահովիտն խաղաղ, տակաւին որոտայր յականջս
» մեր[1] »: — Նորուղի կածանն կտրեալ զգետակն Կուսկութայ, և անցեալ 'ի հարաւակողմն նորին՝ դառնայ ընդ արևմուտս, և գործէ անցս 'ի Հս. Մ. Ջայըր-կէտիք 8450′ բարձր լերին, և ապա ընդ նախայիշեալ Ջիւնակապանն

1 Beim Ersteigen der Koschan mussten wir besonders Sorge tragen, dass die Pferde nicht von tobenden Sturmwind umgeweht wurden, welcher an den Kanten der Krümmungen wüthete, deren mehrere bis auf den äussersten Saum einer mehrere Klafter tief abschüssigen Wand hinausgreifen. An den höchst gelegenen Abhängen brauste der Wind mit fürchterlicher Gewalt, mit einem Getöse, welches einem fortwährenden Donner nicht unähnlich war. Die Hirten von Gisyl-deppe erklärten den Uebergang über den Koshan an einem solchen Tage für ein beteudendes Wagniss. Nur mit grosser Anstrengung erhielten wir uns auf der Südwestseite aufrecht auf den Beinen, und die Pferde, welche schon früher kaum vorwärts gebracht werden konnten, waren auf der Höhe des Joches nicht zu erhalten, sie rutschten, durch die mächtigen Windstösse erschreckt, das Gerölle hinab, ohne der nächsten Krümmung des Weges zu folgen. Auch das Einsammeln von Pflanzen, welches für den Rückweg aufgespart worden war, musste leider gänzlich unterlassen werden; denn der Wind wüthete stossweise so heftig und überfiel uns oft so plötzlich, dass wir uns häufig niederlassen und am Gerölle festhalten mussten, um nicht fortgerissen zu werden. Ueber zwei Stunden hatten wir mit der Gewalt des Sturmes zu kämpfen, dessen Gebrüll in den Höhen noch lange, als wir uns schon im stillen Thale befanden, in unseren Ohren ertönte. Erst in finsterer Nacht, um 10 Uhr, gelungten wir zu der Wache am Zollhause. — Kotschy, Reise, 131.

(6250′), յորմէ և 'ի վայր դարձադարձ մանուածով 'ի լքեալ կապարահանս Կիւլէք-մաղարայ, և 'ի Պահակն Կիլիկիոյ։ Ցայտ է թէ այս բազմադարձ Նրբուղի՝ մեծաւ աշխատութեամբ բացեալ է 'ի վերջին ժամանակս 'ի պէտս գործոյ և հաղորդութեան երկոցուն կապարահանիցն։

Ցետ միութեան երկոցուն յիշեալ վտակաց՝ Կուսկութա դառնայ ընդ արևելս փարախաւ ճանապարհի, սահանս գործելով, և գրեաթէ ուղիղ ընդ հարաւ 'ի Պահակն Կիլիկիոյ, զոր և կորեալ՝ ելանէ 'ի դաշտ։ Ի գոգ դարձուածոյն յարևելից 'ի հարաւ՝ յաջակողմն (յարևմուտս) կայ հանգրուան մի՝ 'ի 5300′ բարձու, Էչմալըգ կամ Էչմալը օլուգ [1] կոչեցեալ։ Անունդ՝ խնձորուտ նշանակող՝ յիշեցուցանէ զխնձորովիտն, հաւանօրէն անուն բերդի, որ մի անգամ ևեթ յիշի 'ի գիրս, յամի 1316 'ի պատմութեան ժողովոյն Ատանայ, յորում ընդ իշխանսն բազմէր և տէր սորին Լիկոս. գոյ և այլ խնձորուտ գեօղ (Էչմալը) 'ի Գլըգ-կէչիտ գետահովտի. ոչ գիտեմ ո՛ր 'ի սոցանէ՝ կամ թէ այլում պատշաճիցի խնձորովիտն նախնեաց։ — Բաւական լայն է մասն ձորահովտին՝ որ 'ի դարձուածոյ անտի մինչև մերձ 'ի սահմանս Պահակին, և ընդարձակ մայրիք են անդ շոճեաց և եղևնեաց. որոց մասն մի մերձ 'ի սահմանս Ջրվիժին՝ հրդեհեալ է 'ի սկիզբն դարուս, և տակաւին յետ յիսուն ամաց ևս երևէր ապականութիւնն. սակաւք 'ի ծառոց զերծեալք կային անդ անճեցունք։ Առ նուազութեան ջուրց կողմանցս՝ նուազ էին և կենդանիք. յաջէ հաւուց եռես բնաքնիննն երկուս տեսակս շնորորի (Larus), և երկուս ծառկոտոսս, սարեակ և ֆինկ։ Ի չորքոտանեաց՝ երևեցան հետք կընճի և մկանց վայրեաց, եղջերուք և քօշք, արջ, գայլ և շնագայլ։ Ձեն կարի առատ և բուսականք վերնակողման գետահովտիս, որպէս խոնարհագոյն 'ի սահմանս Պահակին. 'ի ստորին կողմանս բնիկ ձորոյն Կուսկութայ գտանի դափնի բլրցի ոտնաչափ բարձրութեամբ՝ ընդ օտարոտնեայ Մեղրածուծի (Marr. heteropodum), և ընդ Մակարդախոտ [2] պսակաւոր (Galium coronatum). 'ի խիճս գետայատակին կաուի Թունաթափին Տմոլեան (Vincetoxicum Tmoleum), 'ի վերնակողմն ձորոյն՝ Մեղրածուծ գխաւոր (Marr. velutinum Sibth.), ընդ սպիտակաթել սարաքատակ Աքարբինի. ոսկեգոյն ծաղկամբ արևելեանն Արեւսկի (Helichrysum), շառափայլ գունագոյն Քարոսպն (Anthyllis), Օշնան կարմրաբուն, ուրեք ուրեք Հայկական փլոմիսք (Phlomis Armeniaca), Գոճամօրու, և Եղեսպակ արծաթափայլ։ Տակաւ ըստ վերանալոյ գետնոյն փոխին, որպէս և յայլ կողմանս, ազգք բուսոցդ, մինչև 'ի ձիւնապատ բարձրատափս, ուր ծիծաղէր գեղեցիկ դեղնափայլ խառածաղիկն նկուն (Ranunculus demissus)։ — Անդր քան զԷչմալըգ՝ ընդ հարաւ՝ բարգաւաճեն մայրիք, և մերձ 'ի սահմանս Պահակին՝ գտանի նոր տեսակ մի եղևնւոյ 40′ բարձրութեամբ, մերձագոյն նմանութեամբ եղևնեաց Հիմալայայ լերանց Հնդկաց, նմանաձև մայրի ծառոյ ունելով զխոզակն, այլ եռապատիկ մեծ քան զնորայն, մինչև 12 մատնաչափ երկայն. դրացիք են սորին մայրքն բարեշուքք և ոստազուարճք. որոց սահման երկու կամ երեք ժամուց ճանապարհաւ միայն գտանի վերագոյն 'ի հիւսիսոյ Դրանցն։

39. Այս Դրունք Կիլիկիոյ՝ յորս հասոյց զմեզ կարգ տեղագրութեանս, այնքան հռչակեալք են 'ի պատմութեան նախնեաց, որքան թէ ողջոյն Կիլիկիա. ոչ սակաւ կարևոր և 'ի դէպս ազգային անցից յաւուրս Ռուբինեան պայազատութեան, որոյ և մեծ ապաստան մի էր ամրութեան և զօրաւիգն հաստատութեան, զդէմ ունելոյ երկուստեք հակառակամարտից։ Սակաւ ինչ ձեռին արուեստի, այլ առաւելագոյն մասամբ՝ թէ ոչ և բոլոր՝ բնութեան է սա գործ. յարգեալ 'ի մարդկանէ՝ մանաւանդ յաշխարհակալաց, անդստին յառաջնոց դարուց, յԱսորեստանեայցն սանէ, մինչև 'ի մերումս ժամանակի տիրապետողս, և 'ի պատերազմն Օսմանեանց ընդ կու-



28. Աքարբինն. Euphorbia.

սակալին Եգիպտոսի Մէհէմմէտ Ալեայ. զի այս է գլխաւոր և գրեաթէ միակ յանկագոյն անցք պողոտայի յարևելից՝ յԱսորւոց երկրէ և 'ի սահմանակցացն՝ յարևմուտս՝ 'ի Փոքր Ասիա, և անտի 'ի Թրակիա և յԵւրոպէ. որով և վաճառականաց և մարտկաց և ամենայն դասուց մարդկան՝ արահետ ճանապարհ։ Այլ թէպէտ այսքան հազարամեայ ժամանակօք կոխեալ յանցս և դարձս ազգաց և ազանց, տակաւին չէ քաջ ծանօթացեալ, և ոչ միաբանին նախնեաց և նորոց աւանդեալ նիշք տեղեաց և չափք. որում մարթ է և պատճառս մի զայս համարել, զի թէպէտ մի է գլխաւոր Դուռնն կամ Կապան Կիլիկիոյ, այլ են և այլք, գէթ երկու՝ փոքր կածանք կամ փողք, ոյք ընդ կողմն արևմտից՝ հանեն 'ի սահմանս Լի-

1 Ջի Քօշի գրէ՝ Almalolugh. — Kotschy, 58.

2 Այնպէս անուանեցաւ 'ի γάλα (կաթն) հելլենացի բառէ, զի համարէին հինք՝ եթէ ծայրք ծաղկանն ունիցին զօրութիւն մակարդելոյ զկաթն։ Ազգայինք մեր գաւառականք կորուծի խոտ կոչեն։

առկաւ ժամուք հեռի 'ի Դրանէն և 'ի բերդէն, ցդաշտաբերանն Ատանայ, համարին իբր 75 մղոն. այլ բուն Նեղուց կամ կածան Կիլիկիոյ՝ 'ի Նախննեաց և յարդեաց իսկ՝ որ ի միջոց յետին յիշեալ տեղւոյս և Պոզանդոսի, իբր 40 մղոն, ուր և առ Հռոմայեցւոց և Բիւզանդացւոց սահմանածայրք էին երկոցուն աշխարհաց, Հայկականին (Նահանգաւ երկրորդ Կապպադովկիոյ) և Կիլիկիոյ: Ակիզբըն կամ մուտք կածանին Կիլիկիոյ՝ յիշեալն Մոպսուկրենէ, կամ այժմեան իջեւանն Մէզարլըգ՝ ութ մղոնաւ չափ հեռի է 'ի Դրանցն 'ի Մ. հարաւոյ, և իբրև 18 'ի Հս. Եւ. Տարսոնի. 'ի հնումն քաղաքիկ մի էր, ոչ աննշան՝ վասն դրիցն, և վասն անդ մեռանելոյ Կոստանդեայ կայսեր՝ յամի 361: Աստուստ ընդ ճանապարհին սկսանի և գետինն ամբառնալ և անտառանալ մայրեօք և սորալցեալ բուսաբերութեամբ: — Միջասահման ընդ այս 'ի Հս. Եւ. և ընդ Դրունս յԵւ. հարաւոյ՝ կայ այլ իջեւան՝ Պօսթանլըգ քէօյ անուանեալ, որ զարդիւ ամայացեալ ասի, և հարկ է թէ 'ի հնումն կարևոր տեղի համարէր, իբրև հանգոյց մի ընդ մէջ Մոպսուկրենեայ և Պաճակին: փոխանակ Պօսթանլըգ իջեւանի՝ զոր ոչ ևս եգիտ Լանկլուա, յիշէ զիջեւանն Գզըլխանի: — Ի վերոյ քան զիջեւանքս, Լոտիպ ճանապարհագիրն Մէքքէի՝ ըղխանան կոչէ Սուլդան խանի, سلطان خانی, և Սարը աշըգ, صاری اشق. զոր այլ ոմն 'ի Նոր ուղևորաց եւրոպեայց (Պերալ) Սարաճըգ, Saradjik, գրէ. և կայ սա երիւք մղոնօք չափ 'ի հարաւոյ գեղջն Կուկլակայ. առ որով և աղբիւր ականակիտ ջրոյ, և մշակութիւն ընտիր ծխախոտոյ. իսկ Գզըլխան չորիւք ևս մղոնօք 'ի հարաւոյ կայ Սարը աշըղի: — Մերձ 'ի սա՝ 'ի հարաւոյ կուսէ՝ նշանակի Զարպղ օլուգ տեղի, որպէս թուի վասն չեղելոյ կամ ճղելոյ ինչ կածանին. և առ երի՝ Թէքնէյի գեօղ կամ հանգրուան. իսկ 'ի հարաւոյ Գզըլխանի մղոնաւ հեռի՝ աւերակք Կեօզլէր բերդի, զորոյ որպէսն ոչ գիտեմ. և այլ իջեւանք ինչ մինչև 'ի Նախայիշեալն Մէզարլըգ: — Անգղիացի երէցն Տէվիս որ յամի 1875՝ յԱտանայ քաղաքէ ճանապարհ արար 'ի Կապանն Կուկլակայ, յարևելից յարևմուտս և անտի ընդ հիւսիս վերանալով, յիշէ զանուն յիջեւանաց աստի հանդերձ այլովք, ըստ այսմ կարգի[1]. Նախ էանց ընդ Ջէյհիճ գիւղ, զորոյ բնակիչս եգիտ տխրացեալս ջերմամբ. անտի 'ի Գագըգպաշ գեօղ կաւակերտ՝ գծուծ տամբք, ուր և գիշերօթեացն 'ի բացի (1 յունիս), և առէ զտեղին երկու ևեթ ժամուք հեռի 'ի Տարսոնէ, և զսահմանն քաջ մշակեալս և դալարազեղս. աստուստ մըխեալ 'ի լերանցամէջս և անցեալ ընդ բազում գերեզմանավայրս՝ ժամանեաց 'ի Միւմէննճի. յորմէ սակաւուք 'ի բացեայ է Եարամըզ-չէշմէ (Jaramiz-Cheshme) կոչեցեալ գեղատեսիլ վայր և հանգրուան ուղևորաց, վասն աղբերն՝ յորմէ և զանունն առնու. զի և ընդ այս անցանեն վաճառականք կարաւանք. թէպէտ և լեռնավայր է տեղին, այլ են անդ և ագարակք ցորենոյ: Կիսաժամաւ հեռի 'ի ճանապարհէն երևէր հին բերդ մի Դորակ? (Dorak) կոչեցեալ, որպէս և այլք յոլովք. աստուստ քերելով զվտակաւ միով՝ յորոյ ափունս աճէին Թուփք դափնեվարդից (Oleander), մուծանէր ուղին 'ի կոչկոռուտ կածանն Կուկլակայ, ուր առաջին իջեւան է Կէօզլիւկ խան, յորում գիշերօթեաց ուղևորն (2 յունիս): Աստի երկուց ժամուց ճանապարհ է, անցեալ ընդ ջրամբին լերինս, մինչև 'ի Զարպղ-չէշմէ (Երկճիղ աղբիւր), զի երկու աղբերք են անդ, յորոց ըմպէին երամակք վաճառականաց: Միով ևս ժամու հեռի է աստի 'ի խորաձորի ուրեք՝ իջեւանն Սարը-աշըգ-խան և աղբիւրն, առ որով որձարան հաստատեալ էր Յոյն ոմն, և մշակէր առկաւ ծխախոտ ևս: Աստի սկսանի անձկագոյն ուղի կապանին:

Մղոնաւ չափ միայն 'ի հարաւոյ բերդին Կուկլակայ ամբառնայ քարաբլուր մի 4000՝ բարձրութեամբ յերեսաց ծովու, Սնանայը բէփէսի անուանեալ, յորում նշմարին հետք ինչ ամրութեանց: Ընդ մէջ սորա 'ի Հս. և բերդին 'ի Հր., տարածանին այգիք և ծաղկաւէտ պարտէզք Զուգուր-պաղի անուանեալ, 30 կամ 40 տամբք Թուրքաց: Ի գեղջս յայմիկ բնակէր երբեմն ծանօթ բուսաբանն Քոչի, և յետ նորա համադղի նորին Հապէրհաուէր՝ հաւաքիչ միջատաց և թիթռանց, 'ի բնագիտաց Վիեննայ առաքեալ այսր[2]: Գիւղս այս մասն համարի հանդիպակաց Կիւղէք գեղջ, յարևմտից առ եզերբ միւսոյ գետոյն (Մանուշկայ), ստանօր սակս բերդին մերձաւորութեանն՝ Գալէ-քէօյ կոչեցելոյ, և բնակեալ է մասամբ 'ի Հայոց և 'ի սակաւուց Յունաց, և մասամբ 'ի Թուրքմանաց. երկոցուն ևս տունք աւելի քան զհարիւր՝ երկայնաշար ընդ զառիվայր ճանապարհին կանգնեալ են, և 'ի ծագ նոցին եկեղեցին Հայոց և մզկիթն այլազգեաց. որք ընտանեբար կեան ընդ իրեարս, ըստ վկայութեան ճանապարհագրաց. քանզի և մասն մի 'ի յետնոցս, որպէս ասի, բռնութեամբ փաշայի միոյ Հասան կոչեցելոյ՝ դարու և կիսով յառաջ՝ ընկալեալ են զմահմետական դէն, 'ի ժամանակի յորում տէր կողմանցն էր Միւսմէնճի օղլու: Առանձին իմն թաղ և մասն համարի շուկայն՝ Կիւղէք-պազար կոչեցեալ, երկշար մէն քան կրպակօք, զկողմամբք եօթն Զ. լայն և 200 քայլ երկայն քարայատակ փողոցի. յորոյ վերոյ հովանանան պատշգամբք 'ի պահպանութիւն անցաւորաց յանձրևոյ. հասարակ արուեստաւորաց խանութք են 'ի ներքոյ, իսկ 'ի վերոյ՝ որճանոցք, դեղանոցք և ոսկերչոցք ևս: Վարուն է շուկայն. զի այս գեօղ է գլխաւոր չէն կողմանց Գաւառին Կիլիկիոյ, և կենդրոն մեծ անցուդարձի. ժիր են և բնակիչքն, և Թուրքմանքն անդէւորդք և այգէգործք: Ըստ ներբոյ քարուտ գետոյն՝ զամենայն դիպան տեղի ծածկեն այգիք և պարտէզք, և զայլն՝ տափրալք, բեւեկնիք, գղթորաբեր կաղնիք. սուղ ինչ 'ի վերոյ սկսանի և անտառն սեաւ չոճեաց, կաղնեաց, սօսեաց և նմանեաց: — Ի հիւսիսոյ կուսէ շուկային 'ի ստորոտից բերդաբլրին բղխեալ խաղայ աղբիւր ցուրտ և անուշակ ջրոյ. և սա և երկուքին գետակքն մերձաւորք, և օդք առողջարանք՝ յոյժ ախորժ յարդարեն զբնակութիւն գեղջս Կիլիկիոյ: Յարևմտից նորին կամուրջ արկեալ է 'ի վերոյ Մանուշկի գետոյն, որ հանէ 'ի ճանապարհ գնացից 'ի Գանձէ և 'ի կամուրջն Կիւղնոսի (Ճէհէննէմ տէրէսի), տանել 'ի Լամբրուն և 'ի Տարսոն: Աշխարհագիրն Օսմանեանց

1 Տէվիս, 200-208:

2 Տէվիս, 207:

ասէ, յամի 1522 Մէհէմմէտի ուրումն վզըըկի շինեալ զիջևանատուն կապանին Կուկլկայ, զոր համարիմ լինել ’ի գեղջս յայսմիկ։

Իբրու կիսով մղոնաւ յարևելից հիւսիսոյ գեղջն ամբառնայ քարաբլուրն այն՝ որ կրէ թագ գագաթանն զգեղագոյն բերդն Դրանց Կիլիկիոյ կամ Կապանին Կուկըլկայ, որպէս կոչէր աշխարհահռչակ տեղիս այս՝ առ մերայոցս հարստութեամբ. երևաք քարաբլրոյն ծածկեալ մայրեօք՝ խոժոռագեղ իմն և ահաւորահայեաց յորդաբեն զայն, իբրև ’ի 1508 ոտնաչափ բարձանց կարկառեալ ’ի վերայ անձկագոյն անցիցն և աշխարհամուտ Դըրանցն, որ քառորդաւ ժամու տարակացք են՝ առ ստորոտովն, և յարևելից կուսէ ձորեզեր համանուն ջրոյն։ Ջանգուած լերինն կրաքարեայ է, խաւ ’ի խաւ ’ի վերոյ, անխաւ ’ի ստորև. յորում գտանին և քարացեալ ժըժմակք միապատեանք կամ երկպատեանք, շարք յոզնեկաց (Echinite) ազգէ, և բուսոք. երևին յաւէտ յարևմտեան դիմին, զոր օրինակ և յԱնանանը-բէյի քարաբլրի, որպէս և ոսկերք անասնոց ’ի ժայռս։ — Միջոց քարաբլրին և Պահակին կամ Դրանցն՝ յոյժ քարակաշկառ է անկոխելի, և ժայռք մեծամեծք թաւալեալք ’ի նմին. առ որովք քերէր խափանեալն արդ ուղի իբր 3 և կամ 4՝ բարձր՝ ’ի վերոյ քան զայժմուս, որ ’ի ձորակի է. և անձկագոյն վայրն իբրև 85 քայլ ընդ երկայնն՝ հազիւ 7 կամ 10 Ձ. միայն է լայն. երկուստեք ’ի ստորև ամբառնան ժայռք որպէս պատուարք՝ 5 կամ 6 Ձ. բարձունք՝ նման ազուգայից. յետուստ նոցին յարևմտից՝ 300՛ բարձր քարաժայռք. յարևելից՝ կուտակոյտ կոհակք անհնարին գործեն յայլում կողման կռուան ոտից գտանել. հողմն զօվագին շնչէ հանապազ, որպէս ասեն, յանձուկ յայսմ միջոցի Դրանցն։ Երկոքին բարձրագոյն սարք՝ յորոց միջի է նեղուց անցիցն՝ աւելի քան զ’700՛ բարձունք են։ — Ի տափարակ դիմի արևմտեան քարաժեռին՝ քանդակեալ է բազին մի ’ի վաղնջուց ժամանակաց, և երկու տախտակք արձանագրութեանց՝ խապառ եղծելոց, (որպէս և քարագնաց ուղին որ տանէր անդր), որք ոմանց յունարէն թուեցան, այլում՝ բևեռագիր. իսկ այլք (Լանկլուա և Տէվիս) նշմարեցին լատին տառս և զանուն Ադրիանոսի կայսեր, որպէս և ’ի բազնին՝ կերպարանս մարդոյ։ Առ երի սոցին ամբառնայ սիւն մի, զոր համարեցաւ Տէվիս նշան մղոնաչափութեան։

Բերդն Կուկլկայ յանյիշատակ ժամանակաց շինեալ ’ի պահ Դրանցն՝ յետ դիտելոյ զանցս ազգաց և պետութեանց, և հուսկ զՀայկազնեայցս, այժմ աւերեալ կայ




30. Ցատակաձև Կուկլկայ բերդի.

մերձ ’ի հիմունս. և որպէս երևի ’ի պատկերիդ՝ երկայնաձև քառակուսի է ընդարձակ, յարևմտից յարևելս ձգեալ. ’ի ստորոտս պարսպացն յարևմտից և ’ի հարաւոյ՝ նշմարին բոլորչի աշտարակք. ’ի միջին երևին հետք ոչ սակաւ բնակարանաց, երկու ջրշեղջք հատեալք ’ի վիմի, ամբարանոցք, և գուբ մի երբեմն սինազարդ եղեալ։ Ձևերևին մանրագոյն ևս հետք շինութեանց, որպէս արժանն պահանջէր լինել ’ի նմին, այլ միայ կամար մեծի դրան, յոր հանեն հոկայաձև սանդուղք հատեալք ’ի քարաժեռին՝ վաթսնիւ չափ, երկայն և ցած աստիճանօք, և 1 $^1/_2$ ոտնաչափ լայն, զորս անդուլ հոսանօքն քերեալ գետոյն՝ և անձաւաձև հուն գործեալ, գահավիժի յ’3 $^1/_2$ Ձ. բարձրութենէ։ Ընկուզենիք երկու դարական հնութեամբ հովանանան մուիցն. առ որովք՝ ասեն տեղացիք՝ եղեալ է հին եկեղեցի, որ և դարու միով յառաջ մզկիթ էր, այլ հետքն ոչ նշմարին ստուգիւ։ Արևմտեան պարիսպքն միայն քարուկիրք կանգուն կան, խոշոր շինութեամբ. վերին մասն նոցին սրբատաշ վիմօք յօրինեալ է բարձև, ’ի բնէ դրիցն իսկ ամրացեալ։ Իբրև 300 քայլ է երկայնութեան բերդին, հարիւր՝ լայնագոյն մասին և հա-

զար՝ շրջապատն. 'ի Հս. Մ. կողմն մինչև ցյատակ քանդեալ են պարիսպքն. բազում մարտկոցք են 'ի ներքին կողման կիսափուլ կամարօք: Ցարևմտեան կատարն ամբառնայ դղեակն կամ աշտարակն մեծ՝ 'ի ներքուստ խանձեալ, յայտ է թէ հրկիզութեամբ աւերեալ, որոյ երևին և այլ նշանք: Թուի թէ միջոցք քարաժեռացն 'ի Հս. և 'ի Հս. Եւ. կուսէ պարսպօք փակեալք և անմատնելիք էին. յայնմ կողման է պարտէզ մի և աղբիւր, և արօտք: Ի հիւսիսակողմն բերդին գոն և գետնափորք 'ի քարաժայռս, ջրամբարք, թերևս և մթերանոցք, յորոց մին մեծագոյն՝ երկշար սեամբք և նախադրամբ. զարդիս 'ի բնակչացն շուկայ կոչեալ, այլ թուի և այն ջրամբար գոլ: Հր. Եւ. կողմն անդունդ է 1500՛ զառ 'ի վայր: Առ ստորոտովն կայ աղբիւր, ուրանօր տեսեալ բուսաքնիննն զօշնան՝ զոր չէր այլ ուրեք գտեալ, համարեցաւ 'ի նախնի բերդապահիցն տնկեալ: Ցարևմտից կողմանէ միայն՝ ուր Կիւլէք-Թէփէ լեռնակն է, մատչելի է բերդն, յայլոց երից կողմանց բնաւ անմատոյց. և զի իբր ինն ժամուք ճանապարհի մեկուսացեալ կանգնեալ կայ 'ի բարձրաբերձ լերանց՝ ունելով զկէս չափ նոցին բարձրութեան, յոյժ ահաւորահայեաց երևի, և անառիկ՝ մինչև էր հնարեալ հրետից:

Իբր քառորդաւ ճանապարհի 'ի հիւսիսոյ կուսէ Դրանցն՝ հաստատեալ է արդ Բաժտունն և սուրհանդակաց. որոց հանդէպ յարևմտեան ստորոտս բերդաբլրոյն՝ կիսաժամաւ հեռի անտի՝ են Բովք կամ հալոցք Կապարոյ, Կիւլէք-մատէն կոչեցեալ, ուր զտէին զկապար բերեալ 'ի քանից Պուլղար-մատէնի: Ճանապարհ լեռնակտուր բացեալ է ընդ հիւսիսակողմն՝ 'ի պէտս երթևեկի գործաւորաց բովուցն. միւս ևս ճանապարհ նոյնգունակ ընդ արևելս հարաւոյ բացեալ՝ տանի մինչև 'ի Լամբրուն: Ի վերայ այսր ճանապարհի նշանակելին տեղիք, նախ Քէյին ? որ կայ գրեաթէ առընթեր հալոցացն. յորմէ կիսով փարսախաւ հեռի ընդ արևելս՝ Ինճ քէօյի. և ապա երիւք մղոնօք ընդ հարաւ՝ Էֆիէլէր գիւղ՝ Թէքէլլի-օղլու Թիւրքմէնից՝ արուեստաւորաց փայտեղէն անօթոց. յորմէ նոյնքան ևս 'ի ստորև՝ առ փոքու վտակաւ՝ ջրաղաց մի. այլ ևս երեք մղոն 'ի Հր. Եւ. Պօշլար գիւղ. և ապա փարսախաւ մի ևս ըստ նմին դրից ուղղութեան՝ Թեկչէն? գիւղ. յորմէ չորիւք մղոնօք ևեթ հեռի կայ Լամբրուն՝ ընդ արևելս կոյս:

Այսքիկ են արդ ծանօթ տեղիք և շէնք հռչակաւոր Կապանին Կուկլկայ և Դրանցն Կիլիկիոյ, զոր մի 'ի գերագոյն զինուորական անցատեղեաց երկրի նշանակեցաք, և թերևս բնաւից երիցագոյն. քանզի հաւանելի է Ասորեստանեայց և Եգիպտացւոց իսկ նախ, և ապա Պարսից՝ բազում անգամ ընդ նրբուղի կածանն այն անցուցեալ երկայնատող գունդս բանակաց. սակայն առաջին նշանաւոր անցք ընդ այն՝ եղեն զօրացն Կիւրոսի փոքու, 'ի նշկահելն զեղբայր իւր Արտաշէս Երկայնաձեռն արքայ Պարսից, 400 ամաւ յառաջ քան զԹուական Փրկչին. դէպք՝ որ առաւել ևս հռչակեցան գեղեցկավէպ պատմութեամբ Քսենոփոնի Աթենացւոյ իմաստասիրի՝ նիզակակցի նորին և առաջնորդի բիւրու միոյ Հելլենաց. Թուի թէ յայնժամ անցքն ևեթ ճանաչէին, առանց կարևոր ամրութեանց պահակի կամ դրան, զի պատմիչն այն լեռնանցս ևեթ ասէ (Τὰ ἄκρα), որպէս խորհրդածէ Բիդդէր, և ոչ Դրունս (Πύλας), որպէս սուղ զկնի ասէ վասն Դրանցն Ասորւոց, զայն ևս յանուն Կիլիկիոյ կոչելով: Ի դիմել Կիւրոսի յԻկոնիոնէ այսր՝ Սիւեննեսիս Թագաւոր Կիլիկիոյ՝ ունէր զգլուխ լերանցն, այլ 'ի մերձենալ նորին՝ եթող և չոգաւ 'ի Դրունս Ասորւոց, ապա և զայն ևս եթող: Արժան համարիմ յայս 'դէպս յիշել և զայն, զի կին նորա Եպիաքս կամ Եպիաքսա՝ գոլով առ Կիւրոսի, սա ընդ կարճոյ ճանապարհ առաքեաց զնա յԻկոնիոնէ 'ի Տարսոն. յայտ ուրեմն՝ զի ծանօթ էր և յայնժամ արևմտեան կածանն որ ընդ Աւակլի և ընդ Սոլի՝ 'ի Պուլղար լերինս: — Ընդ այս համարի անցեալ և մասն մի բանակին Աղեքսանդրի. իսկ սա ինքն ընդ ծանօթ պահակն Կուկլկայ անցեալ՝ հալածեաց զահաբեկեալ Պարսիկսն, որոց առաջնորդ կարգեալ էր Արզանէս (թերևս Արձան) ոմն. մարթ էր սոցա փոքու գնդաւ զդէմ ունել Յունաց՝ յանձուկսն, որով թերևս այլազգ դիպէր բաղդին Դարեհի, կամ անագանէր պատահարն. այլ և յայս դէպս՝ պահակս այս եղև բանալի նորոյ տնտեսութեան և ինքնակալութեան երկրի: — Մի անգամ ևս 'ի հին պատմութեան յիշի՝ առ կայսերութեամբ Հռովմայեցւոց յելս Բ դարու, միոյ 'ի բռնաբարողաց գահուն, Պեսկեննիոսի Նիգերի (Սեաւ) կոչեցելոյ, ամրացուցանել զպահակս Կիլիկիոյ, ընդդէմ զօրաց Սեպտիմիոսի Սեւերոսի կայսեր. այլ ամբարտակք նորին ջրատարք եղեն 'ի յարոյցս հեղեղաց, և զօրքն խորտակեցան 'ի հզօր հակառակորդէն: — Ծանօթագոյն և յետին նշանաւոր դէպք և ամրութիւնք՝ առ մեր իսկ ժամանակօք գործեցան, յամս 1839-40, յընդվզել Մէհէմմէտ Ալի կուսակալի Եգիպտոսի յՕսմանեան դրանէ, և տալ մարտ՝ առաջնորդութեամբ որդւոյ իւրոյ Իպրահիմ Փաշայի. որ յետ հարկանելոյ զբանակն արքունի՝ ձեռն արկ ամրացուցանել զպահակն. աւերեալ և խցեալ նախ զայլ ամենայն անցս լերանցն. և առ յոյժ անձկութեան տեղւոյն՝ փարսախաւ 'ի վերոյ՝ 'ի հիւսիսակողմն՝ հաստատեաց զբուն ամրութեանն 'ի տափարակի Թէքիր [1] անուանեալ տեղւոջ կամ գեղջ յ'3000՛ բարձու, 'ի ձեռն Շուլց գնդապետի լեհացւոյ (Եուսուֆ աղա կոչեցելոյ). ընդ մղոնս երկու՝ յարևելից հարաւոյ ընդ արևմուտս հիւսիսոյ հաստատեալ մարտկոցս և բաղխոցս, և աշտարակ մի հզօր 'ի դիտանոց՝ 'ի դժուարամատոյց բարձրաւանդակի՝ 'ի հարաւակողմանն, այլ և ճամբար պատնիշափակ 'ի գագաթան բլրակի միոյ յարևմտագոյն ծայր ամրութեանցն, որ Թուպեա կոչի: Ընդ մէջ երկոցուն սոցա (աշտարակին և ճամբարին) զետեղեաց ութ մարտկոցս քարաշէնս, պատնիշօք, խրամօք, բաղխոցօք, և ամենայն կարևոր պատրաստութեամբ՝ ըստ զինուորական արուեստի, զինեալ հարիւրաւոր մեծ և փոքր հրետօք ընդդէմ պահակին.

1 Ըստ Նոր Հայաստանի, (360), «Գիւղ խիրէ նեառընկեց մի հեռի 'ի Կիւլէք բերդէն, կառուցեալ 'ի տափարակի»: Երեւեցէք Թէքէլի գրեն. Թուի նոյն ընդ յիշեցելոյն յէտևէ, Թէքէլլի Եայլէ تكيرلى ييلاق (Արօտք Թէքիրլեայ):

որովք խաղառ աննուաճելի գործէր զտեղին և զբանակ իւր. և կրկին հաստատէր զառածն Թուրքաց, եթէ

« Որ չերկնչի 'ի Պաշակէն
Նա չերկնչի և յԱրարչէն » :

Բայց այս ամենայն պատրաստութիւնք չեղեն պիտանացուք, վասն միջամուխ լինելոյ եւրոպական պետութեանց և ստիպելոյ 'ի հաշտութիւն (1840). որով յետս նահանջեալ Իպրահիմայ՝ եղծ զնորաշէն ամուրսն, բարձեալ զմասն ինչ հրետից՝ զորս բազում դժուարութեամբ և ճգամբ՝ այլ յաջողութեամբ՝ հանեալ էր 'ի բարձունս անդ ապառաժիցն, և զայլսն յետոյ բարձին Օսմանեանք. և ապա 'ի ծագել Ռուսական մարտին յամի 1853՝ եղծին խապառ զմարտկոցսն, և 'ի բաց տարան զմնացուածս պատերազմական գործեաց և նիւթոց, թէպէտ և ցարդ նշմարին տեղիք ամրոցացն լքելոց: Այլ թուի ինձ անյիշաչար բնութեան բուսական գեղով իւրով ճգնել ծածկել զդժնդակ յաչաղանս ոխութեանց. քանզի և ամենայն անցորդք Եւրոպէացիք զքանչացեալ յիշեն ընդ խոժոռութեան վայրուցն և զգեղեցկութիւնն, զօդոցն յստակութիւն, զջուրց քաղցրութիւն և զբուսականացն հարուստ և զանազան բարգաւաճանս. յորոց մի ոմն Անգղիացի աշխարհագիր (Էնզուըրտհ), որ՝ յետ քննելոյ զպատերազմական դիրսն և զնորակազմ պատրաստութիւնս Եգիպտացւոցն, անցանէր ընդ Պահակս այս, յ'30 Նոյեմբերի 1839 ամին, գրէր[1]. « Անհնար է ձիավարել ու֊
» ղևորի ընդ բովանդակ երկայնութիւն Կապանին,
» և ոչ մեծապէս զքանչանալ ընդ զանազան վայելչու֊
» թիւնսն ... (թէպէտ և իցեն առանձինն ինչ չնորհք գե֊
» ղոյ և այլոց անցից Տաւրոսի), այլ տակաւին Կիլիկեան
» Դրանցս՝ գերազանցեն, յոլովութեամբ և զանազանու֊
» թեամբ վայրուց խրոխտ և հարստակող լեռնային տե֊
» սարանաց՝ քան զընաւիցն: Գերագոյն բարձրութիւն
» լերանց և հսկայաչափ ստորճան տեսարանաց Ալ֊
» պեայց՝ չիցեն արգել համեմատելոյ զնոսին ընդ Տաւ֊
» րոսական պարուս, իբրու ամենայն դիմօք նուազեալ
» լինել սոքա. կարէ ճարտար պատկերացուցիչ նոցին
» (Brockedon) գտանել և 'ի կիլիկեան պահակիս բա֊
» զում ինչ քաջ քաջ արժանաւորս գրչի իւրոյ: Չէն ինչ
» պիտոյ աստանօր խնդիրք հաւաստելոյ զչափ բարձրու֊
» թեան երկաքանչիւր պարուցն. այլ դժուարագոյն գործ
« է վճռել թէ որով իւիք նշանաւ առաւելուցու մին քան
» զմիւսն: Են 'ի կիլիկեան անցս բացածք նման Վալէի
» (Հելուետիոյ), այլ 'ի Վալէ՝ երկուստեք ամբառնան եր֊
» կարաձիգ անընդհատ շարք լերանց, որք ուր ուրեմն
» տաղտուկ ածեն, մանաւանդ հետեւակագնացի մարդոյ
» (համակերպութեամբն). իսկ աստ 'ի Կիլիկիայս՝ լեառն
» զլեառն յաջորդէ՝ յաջմէ և յահեկէ, և ընդարձակ կի֊
» սաբոլոր վախք ամբառնան խորտակեալ սառնակոյտս
» դիզադէզ կուտակեալս, այնքան հարուստ խառնակու֊
» թեամբ և աննմանելի վեհութեամբ, մինչև անհնար
» լինելոյ ձանձրանալ 'ի տեսարանաց, որք՝ ընդ որ կողմն
» և դարձցին աչք նկատողին՝ նորանորս ընծայեն զար֊
» մանս: Ուր ուրեք յաւէտ ժայռուտ կոշկոռուտ է Կուկ֊
» լակ, որչափ ինչ նկատեցի, անհամեմատ է տեսարան
» նորին. այնպէս խառն մի ըստ միոջէ յաջորդեն մեծա֊
» մեծ զանգուածք թաւալեալք, քարաժայռք սարաւան֊
» դեալք և սեպ առ լեռ խութք, զի անհնար գործեն
» զնկարագրելն, և անբաղդատ ընդ Դրոզաքսայ[2], թէ֊
» պէտ և տասնապատիկ ևս յաւելցէ ոք զստգայս մեծու֊
» թիւն: Թողից յիշել զբուսականութիւն և զբնակու֊
» թիւն մարդկան՝ իբրև յաւելուածս ինչ յատկութեան
» տեսարանացս այսոցիկ. այլ հարկ է չառնել զանց զայ֊
» սու, զի զառնակորզակն կամ անգղն Ալպեաց (կոն֊
» տոր) դուն ուրեք հանդիպի աչաց անցորդի, բայց մի֊
» այն 'ի բարձունս՝ յորս չէ մարթ հաւաստել զմեծու֊
» թիւն և զզօրութիւն նորին. այլ զմեծամարմին լեր֊
» կավիզ անգղն՝ որ 'ի Տաւրոս զտեղի ունի կոնտորի Ան֊
» տեայց և զգառնակորզակի Ալպեաց, և մեծագոյն քան
» զյետինս այս է, դէպ լինի երբեմն տեսանել՝ տասնե֊
» չափ 'ի միասին երամով, դէտ կացեալ սպասելով՝ զի
» աւարտեսցեն շունք հովուաց զյագուրդն 'ի մսոյ նորա
» սպանելոյ ինչ անասնոյ. և գտանին հանապազ 'ի հա֊
» ճոյական ծերպս քարաժեռից իւրեանց »: — Բուսաբերութիւն թէպէտ և յամենայն կողմանս պահակին հարուստ երևի, այլ առաւել ևս 'ի հարաւակողմն, ուր ընդ սրատերև մայրեաց՝ խառնին լայնասաղարթ սօսիք գեղերք հովտաց. 'ի խորաձորս՝ ազգք մշտադալար կաղնեաց, գեղձիք, մայրք, դափնիք, մոլաթզենի, սերկևլի և որթ վայրենի ձկտեալ 'ի բարձունս, ընդ որովք փարթին զգետնաւ թաղթն կապուտակ և քրքումն դեղնորակ: Ի զանխուլ ևս ծործորս աճեն մրտենի, զօղալենի, ձիթենի վայրի, յունապի, և 'ի խառս ամենայն վտակաց՝ դափնեվարդն գեղածաղիկ (Oleander): Թողեալ զազգ

1 « It would also be impossible for any traveller to ride the whole length of this pass, without being much struck with its varied beauties.... till the Golek Boghas contains by far the most numerous and varied points of bold and massive mountain scenery of any of the passes. The superior height of the mountains, and the gigantic scale of the scenery of the Alps, does not allow of their being fairly compared with the chain of Taurus, in every aspect inferior to them ; but the able illustrator of the former (Mr. Brockedon) would also find much that would be highly worthy of his pencil in the Golek Boghas. The differences of elevation between the two will no doubt be hereafter ascertained, but it will be more difficult to decide upon their peculiar claims to distinction. There are in the Golek pass open spaces like the Vallais, but in the Vallais, on each side, are long continuous mountain ranges, which ultimately (especially to a pedestrian) become monotonous, while in the Golek, mountain succeeds to mountain to the right and left, and vast semicircular precipices support broken glaciers piled one upon another in such profuse confusion and inimitable grandeur, that it is impossible to tear oneself from a scene which, wherever one turns, presents a new wonder. In its more rocky, craggy scenery, the Golek is, as far as I have seen, quite unrivalled : such a succession of fallen masses, rocky projections, and steep cliffs, will not admit of description, nor would they be represented by the Trosachs ten times magnified. I need not mention the vegetation or the habitations of men, as adding to the peculiarities of these scenes : but one thing is deserving of notice : the lammergeyer or the condor of the Alps, is rarely seen by the traveller, except at height at wich its size and strength can only be conjectured ; but the great bare-necked vulture, wich represents in Taurus the condor of the Andes and the lammergeyer of the Alps, and is a larger bird than the lasser, may be sometimes seen in dozen together, waiting till some surly shepherd's dogs have had fill of a newly-killed animal, and they are never wanting amidst their favourite crags ». — W. AINSWORTH. Tom. II, 79-81.

2 Լերինք 'ի Սկովտիա հաշակեալք գեղեցկութեամբ տեսարանաց:

տղգս մանրագոյն բուսոց և ծաղկանց՝ զորս վերիվայր նշանակէ ծանօթ բուսաքնինն մեր գերմանացի (Քոչի), յիշելի է և գեղաղէշ տեսակ մի Պիսակոտ կամ Խայտաճամուկ Նուինճի. ընդ որ՝ 'ի նմին ժամանակի (1852-3) հիանայր և այլ ոմն երիտասարդ քննիչ կողմանցս Կիլիկիոյ, հայագէտ փռանկն Լանկլուա[1]:

40. Ցետ ճանաչելոյ զդիրս գերահռչակ կիլիկեան պահակիս, և զդէպս քաղաքական անցից, պահանջէր արժանն և զհետս ազգային գործոց նկատել աստանօր, կամ զհանդիպեալսն 'ի ժամանակի հարստութեան Ռուբինեանց. և նախ՝ զարմանալով իմն, զի ոչ որպէս յունականն էր, շատ ինչ աւանդի զտեղւոյս առ պատմիչս կամ յիշատակագիրս մեր, և ոչ քաջ որոշակի. նա և ընդ երկբայութեամբ իսկ արկանեն զմեզ անուանք և դիրք տեղեաց. զի որքան և աշխարհածանօթ է արդ Կիւլէք կոչումն Դրանն և բերդին, առ մեր պատմիչս ոչ յիշի յայս անուն դուռն կամ կապան Կիլիկիոյ, այլ յաճախ լոկ Կապան կամ Բերդ Կապանին. որով՝ բազում այն է զի ճանաչի Կապանն որ մերձ 'ի սահմանս Մարաշոյ. յիշի և Կապան Կուկլկայ սակաւ երբէք, բայց ոչ քաջ որոշակի դիրքն. զարդիս սովիմբ կամ մերձաւոր անուամբ Կուկլուկ ճանաչի լեառն մի յարևմտեան հարաւային ծագ պարու Պուլղար լերանց Կիլիկիոյ, և է անտանօր իսկ կապան կամ անցք ընդ մէջ կողմանց Գարամանի և գաւառին Տարսոնի: Սակայն գերազանցութիւն բնիկ պահակիս Կիլիկիոյ, տեղակարգութիւն բերդին Կուկլկայ 'ի չորս բերդորէից Թուելոց 'ի Սմբատայ Գունդստապլէ, և այլ բան մի նորին, յիշատակ երկուց միայն գլխաւոր բաժտանց 'ի սկզբն Լևոնի Բ (1288), Այասայն և Կուկլակայ, և վկայութիւն փռանկ ուղևորի միոյ՝ սակաւուք յետ բարձման Թագաւորութեան Հայոց, եթէ ասա առ ծանօթ դրամբքս Կիլիկիոյ էր բերդն՝ զոր յետ ամենայնի ստիպեցան Հայք լքանել, այս ամենայն տան ինձ աներկմիտ ընդունել, թէ սոյն այս տեղի՝ որ առ օտարս Դրունք կամ Անցք Կիլիկիոյ (Pylæ Ciliciæ) կոչի, է Կուկլակն Հայոց և Կապան Կուկլկայ: — Զասեն ինչ աւելի յայտնութեամբ և այնքան արևմտեան պատմիչք մեծանշան անցից Խաչակրաց յԱսիոյ փոքու 'ի Կիլիկիայս, մանաւանդ թէ այլևայլ բանիւք և անուամբք՝ առաւել ևս շփոթ և տարակոյս արկանեն, մինչև այժմեանս իսկ հմուտից քննողաց դժուարալոյծ թուել խնդրոյս. և այս ոչ միայն վասն անուանցն զանազանութեան, այլ և վասն անճառման գնդից Ա. Խաչակիր բանակին՝ ընդ այլևայլ կողմանս հուն անցի խնդրելով 'ի Կիլիկիա. և զայս թերևս հաստատեցեն վկայութիւնք մերազգի պատմչաց, որոց միաբանին և արևմտեայք, եթէ իշխանք Հայոց ձեռնտու և առաջնորդ եղեն Խաչակրացն, 'ի հիւսիսոյ արևմտից լերանցն բարձանց՝ գալոյ յայսկոյս 'ի Հր. Եւ. և մտանել 'ի Կիլիկիայս, և անտի յԱնտիոք, յԱսորիս և 'ի Պաղեստին: Անդստին ուրեմն 'ի վերջ կոյս ԺԱ դարու, և 'ի սկզբան պայազատութեան իւրեանց՝ կալեալ էր Ռուբինեանց զանցս լերանցն, գէթ զգլխաւորսն, յորս անշուշտ և կապանս այս Կուկլկայ կամ Դրունքն Կիլիկիոյ. և թէ չէր իսկ յայնժամ 'ի բուն 'ի նեղուցս Դրանցս պահնակս կարգեալ Հայորերոյն, այլ սակայն զվերին կողմանս կածանին կալեալ ունէին, զայն՝ զոր մերայինք՝ որպէս և արևմտեայ եկք՝ կոչեն Կապան Պոտանդոյ: Ժամանակագիր պատմիչ մեր Ուռհայեցի (Մատթէոս) համառօտիւ ասէ վասն մեծի բանակի Խաչակրացն առաջնորդելոց յանմահանուննն Կոփրետեայ, 200,000 արանց ընդ հեծեալ և ընդ հետևակ, « ճանապարհ արարեալ ընդ աշխարհն Բիւթանացւոց, և ընդարձակ բանակաւ անցանէր ընդ սահմանս Գամրաց. և հասանէին 'ի դժուար » վայրս լերանց Տաւրոսի. և խաղացեալ էանց բազմութիւն բանակին, և ընդ նեղ կապանն նորա գնալով ընդ » Կիլիկիա, և էանց ընդ Դրովագա՝ որ է Անաւարզայ. » և հասանէր 'ի քաղաքն Անտիոք»: Ոչ ցուցանեն բանքդ յայտնապէս ո՞ր իցեն վայրքն այն դժուարք և նեղ կապանք: Ի համեմատութենէ և համաձայնութենէ եւրոպացի հին ժամանակագրաց՝ գլխաւորեն արդ խոհական քննիչք, զի աշխարհախումբ բանակն հասեալ յԻկոնիոնէ յԱռակլի՝ դադարեաց անդ աւուրս ինչ, և յետոյ մեծ մասն ամբոխին խոտորեալ խաղաց ընդ արևելս հիւսիսոյ, դադարելով մի ըստ միոջէ՝ նախ 'ի տեղի մի Մարիզա անուն, ապա յԱւփիա ամուր վայր, զոր և առեալ՝ յանձնեցին յիշխան մի Հայոց Շմաւոն անուն. անտի ամբարձան մինչև 'ի Կեսարիա, ապա դարձան յանծանօթ քաղաք մի Plastentia կոչեցեալ, և յոմանց կարծեցեալ Կոմանա, անտի եկին 'ի Կոկիսոն. յորմէ և անդր անցեալ բազում տառապանօք ընդ դժոխաձև անիծեալ լերինս (diabolica, execrata montana), և ընդ խորաձորս՝ ժամանեցին 'ի Մարաշ: Ցայտ է թէ ձորն այն՝ էր գետոյն Ջահանայ, և լեառնն դժնդակ՝ թերևս կոչեցեալն այժմ Ախըր տաղ: Ժամանեալք 'ի Մարաշ՝ 'ի կամս նոցա էր այնուհետև երթալն ուղղակի յԱնտիոք, կամ անցանել ընդ Անաւարզա, որպէս տարէգիրս մեր ասէ, իսկ արևմտեայքն ոչ: Այլ կարևոր նկատելի այս է, զի բանակն մեծ ոչ էանց ընդ բուն դուռնն Կիլիկիոյ, այլ՝ ընդ այլ լեռնանցս քաջածանօթս՝ յերկրին Ջահանայ, և որպէս թուի ոչ հեռի 'ի Զեթունէ: Սակայն մինչև վերացեալ բանակին յԱնտիոքեայ Պիսիդիոյ, գունդք երկու հատուածեալք 'ի նմանէ, միոյն՝ առաջնորդութեամբ քաջայանդուգն Տանգրեայ[2], միւսոյն՝ հակառակորդի նորին եռանդուն երիտասարդին Պալտընի Պուրկեան (Baudouin de Bourg), ըստ վկայելոյ ոմանց 'ի լատին ժամանակագրաց, ընտրելով զկարճոյ այլ զդժուարին ճանապարհ, ընդ ձորն Պոտրենդրոյ՝ մտին 'ի Կիլիկիա և եկին 'ի կողմանս Տարսոնի: Զուգաձայնի սոցա

1 C'est principalement dans cette région que j'ai remarqué une admirable plante particulière à l'Asie Mineure et qui mérite une mention spéciale. La tige de cette plante de 3 à 4 pieds, est couronnée par un calice de couleur pourpre, en forme de cornet, dont l'angle supérieur s'allonge et retombe comme la manche d'un kaftan. De la corolle s'élance, en guise de pistil, un dard quadrangulaire, semblable à une lame d'épée, d'un violet presque noir et long d'un pied environ. L'extérieur des étamines, la tige et les feuilles finement découpées et frisées sont d'un vert clair mouchete de brun comme la peau d'une couleuvre. Les Turcs nomment cette plante *Ilan-otou* (Herbe de Serpent); son nom scientifique est *Arum maculatum*. C'est une plante employée en médecine. — Langlois, 368-9.

2 At Tancredus nemorum devia, montium ardua, Cilicum flumina prætervolanda eligit. — Raoul de Caen. — Ըստ այսմ օրինակի, սուղ ինչ զանազանութեամբ, ասեն և այլք ոմանք 'ի պատմչաց:



Պատմիչն մեր կիլիկեցի, այլ ոչ զանազանելով զհատուածեալ գունդսն 'ի բուն բանակէն՝ միանգամայն ասէ. « Սոցա (իշխանացն Հայոց) յորդորմամբ՝ խաղացեալ անհուն բազմութեամբ անցին ընդ կապանն Պաւռանդոյ, » և անտի գնացին յԱտանա և յԱնարզաբա, և անտի 'ի » մեծն Անտիոք » ։ Ահա արդ յայտնապէս երևի զի մասն մի բանակի Ա. Խաչակրաց՝ ազնուազարմ զօրապետօքն՝ անցին ընդ կապանն Պոդանդեայ և ընդ պահակս Կիլիկիոյ. և լինէր այս յիշխանութեան Կոստանդեայ որդւոյ Ռուբինի, յամի 1097։ Յորում ժամանակի՝ Թուի ինձ հին բերդի Պահակին ամայացեալ և աւերեալ լինել, որպէս և Լամբրունն և Պապեռօն. ապա յընդարձակել ձեռին Հայոց յընդհանուր Կիլիկիայս՝ մի 'ի գլխաւոր բերդորայիցն եղև և Կուկլակ. որոյ իշխան հարիւր ամաւ յետ այսր մեծի դիպուածոյ՝ 'ի սկիզբն Թագաւորութեան Լևոնի՝ էր Սմբատ, հաւանօրէն 'ի Հեթմեանց տոհմէ, և թերևս եղբայր արքայահօրն Կոստանդեայ։ Երկիցս յիշէ Գունդստապլ պատմիչն՝ զԿուկլկայ կապանն, յամս 1245 և 1246, 'ի դէպս արշաւանաց Քէյ-Խոսրով սուլտանին Իկոնիոնի. որ զառաջինն՝ առաջնորդութեամբ « Պարոն Կոստանդեայ Լամբրոնի տիրոջն (եղբօրորդւոյ » Ս. Ներսիսի) մտաւ ընդ Պապառոնին լեառն 'ի վայր ». գուցէ գոյր և անդ կածան մի. իսկ զդարձն կամէին զօրք սուլտանին ընդ ծանօթս այս ընդ կապան առնել. « Ապա » եւ ածին? որ ելնեն ընդ Կուկլկայ կապանն. Թագաւորն (Հեթում) հեծելովն 'ի հետ եւ, և Թագաւորահայրն և Սմբատ Գունդստապլն. և հասին 'ի տեղի մի » որ Մայծառ ասեն. նա դարձան անթիւ չատ 'ի յետ. » մեք դիպաք ու Աստուծով խանգարեցաք, և կոտորելով » վարեցաք ինչվի Պուտանդէ։ Նա յետ մէկ տարւոյ՝ » 'ի թուին ՈՂԵ, արարին չատ ժողովք, ու եկին մտան » ընդ Կուկլկայ կապանն 260,000! մարդ, և բոլոր պատեցին զՏարսուս », և այլն. այլ զայս նուագ յետ երկար հակառակութեան՝ դաչնադրութեամբ յետս նահանջեցան։ — Նախայիշեալ սիգելն (պարգևագիր) Լևոնի Բ յամի 1288, առ Գենուացիս, յայտ առնէ՝ եթէ վաղուց հաստատեալ կայր առ պահակին Կուկլակայ Բաժտուն կամ մաքսատուն վասն վաճառականաց, և զայն յապուշ կոչէ. « Յապուր որ տան ընդ Այաս ու ընդ Կուկլակ », Gogulac գրեալ 'ի լատին հին թարգմանէ. և չափ սակին այսպէս սահմանեալ էր. « Ի Պրիսիմն (մետաքս) 'ի յըլտարեան՝ նոր դրամ[1] քսանուհինգ ... 'ի » ջորէբեան՝ նոր դրամ իննևտասն, և 'ի յիշբեան՝ նոր » դրամ տասնուվեց », և այլն. ըստ պէսպէս նիւթոց զանազանելով և չափու դրամոցն։ — Յաւուրս Թագաւորութեան Օշնի յառաջին քառորդի ԺԴ դարու՝ եղբայր նորին Ալինախ էր տէր Կուկլկայ, որպէս նշանակի 'ի լատին յիշատակի միում[2]։

Յետ այսր ոչ յիշի յանուանէ Կուկլակ 'ի գիրս մեր. և որպէս վերագոյնդ ասացաւ՝ թերևս ուրեք կապան[3] անուամբ նշանակեալ՝ չփոթիցի ընդ Ջահանեանն կապանի. զոր ոչ կարելով առ ժամս որոշել և ստուգել՝ թողում առ յապայն։ — Պերդրանտոն ճանապարհագիր փռանկ՝ որ յիսուն և եօթն ամօք Լեթ յետ բարձման պետութեան Հայոց էանց ընդ կապանս Կուկլակայ, Կուպլէկ (Cublech) կոչէ զբերդն՝ 'ի վերայ բարձր լերանց, և բարձրագոյն քան զընաւ տեսեալսն ասէ, երկօրեայ ճանապարհաւ 'ի հեռուստ նշմարեալ, այլ վասն խոտորկոտուր ճանապարհին՝ ուրեք ուրեք ծածկեալ յաչաց. և հարկ է, ասէ, ամենայն ճանապարհորդի որ կամիցի մտանել յերկիր Գարամանին՝ անցանել հետի ընդ լեառնս այս՝ յորում բերդս է, յոյժ անձուկ գոլով ուղւոյն և ուրեք ուրեք կռանաւ հատ գործեալ. բերդն՝ զոր Հայք հուսկ բնաւից կորուսին, ասէ, էր յայնժամ 'ի ձեռս տեառն Գարամանի, յետ մահուան Բամազանի։ Ասէ և զլերինս ընդ որս էանց յետ բերդին՝ մշտնջենաւոր ձեամբք ծածկեալ, թէպէտ և էին 'ի մէջս ցլս նոցին և դաչտակք. և թէ, յելանելն արտաքս 'ի լերանց Հայոց՝ առ 'ի մտանել 'ի Գարաման, հարկ էր անցանել և ընդ այլ ինչ լերինս, յորոց 'ի միումն բերդն Լուլուայ, զորմէ տեսաք զասացուած ուղևորիս (յէջ 114). որ և անցեալ ընդ այն և ընդ Ասկուռաս՝ գնաց մի ըստ միոջէ յԱռակլի, 'ի Լարանտա, յԻկոնիոն, և այլն. յորմէ երևի՝ ընդ սովորական ուղի լերանց Կիլիկիոյ և Պոդանդեան կապանին՝ ճանապարհ արարեալ. զի եթէ ընդ արևմտեան անուանեալն կամ գրեալն 'ի տեղագրոյս՝ ընդ Կուկլուկ լեառն էր ճանապարհ արարեալ, 'ի դէպ էր նմա ուղղակի գնալ ընդ արևմուտս 'ի Լարանտա, և ոչ ամբառնալ ընդ հիւսիս և անցանել ընդ լերինս և ընդ բերդս Լուլուայ և Ասկուռայ, երթալ յԱռակլի, և դարձանել ընդ հարաւ 'ի Լարանտա. թող զի ոչ գտի առ ճանապարհագիրս յիշատակ զայսր արևմտեայ Կուկլուկայ, թէպէտ և 'ի քարտս ոմանս նշանակի։

Այժմու բնակիչք խլամացեալ գեղջն Կուկլկայ՝ աւանդեն, մինչև մերձ 'ի նուաճումն Կիպրոսի յՕսմանեանց, մնացեալ և բերդիս 'ի ձեռս քրիստոնէից, զորս մէջ ճենովացիս կոչեն, և Հայ զօրավարի միոյ 'ի սպասու Թուրքաց գոլով՝ պաշարեալ եօթնեակս վեց և ոչ կարացեալ նեղել խապառ սովով. ապա ելեալ 'ի հիւսիսային արևմտեան կողմն, և անտի ամբաձիգ լինելով և հրդեհելով զանտառն՝ հրակիզեալ է զբերդն և նուաճեալ։

Ընդ մէջ վերոյիչեալ դիտանոց աշտարակի և պատնիչաց Իպրահիմայ՝ իջեալ փոքրիկ վտակ մի 'ի հիւսիսոյ կողմանէ 'ի բարձանց անջրպետաց օժանդակացն Կիւդնոսի և Սարոսի՝ անկանի 'ի Կուկլկայ գետակն, առ նորին իջեվանաւ և բաժտամբ. մերձ յակունս աղբերն կայ՝ երկու մղոնաւ 'ի հիւսիսոյ աշտարակին՝ հին իջևանատուն. և առ նմին՝ յարևելից կապանին՝ աւերակք, որպէս ասեն, մեծի և չահաստան քաղաքի, որ իցէ թերևս հին աւան բերդին Կուկլակայ։

Մերձ յայս սահմանս յիշի բերդ մի Դաիզիմի? անուն, Δριζύβιον, յոր նստոյց Նիկեփոր Փոկաս կայսր, յամի 965, զընտանիս իւր, 'ի խաղալն ընդդէմ Արաբացւոց։

1 Նոր դրամն Հայոց ժամանակին էր սուղ ինչ պակաս կէս փառանգի։ Զարդիս բաժ Օսմանեան տէրութեան՝ յըլտարեան հասարակ կոտաւոց, սաւր և ընգէղինաց՝ է եօթն ղուռուշ, ազնուագոյն նիւթոց՝ առաւել քան զայն։

2 Դիւանք Վենետկոյ, Patti, 4, 79, 81.

3 Ի նորագիւտ ժամանակագրութեան Հայոց՝ Յովհաննու Տարտելի (Dardel), որ գլխովին պաշտպանն Լևոնի Եհ առէ 'ի Սիս, մէանեին զրոյց զկապանէ։

## ՀՈՎԻՏՔ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՍԱՐՈՍԻ

41. Պարք բարձր բարձր լերանց Գահաւն Կիլիկիոյ՝ ան_ջրպետեն ընդ գետահովիտս Կիւդնոսի 'ի հարաւ, և ընդ ձորահովիտս արեւմտեան առափնից Սարոսի՝ 'ի հիւսիս կոյս. միջոցն որ 'ի հիւսիսոյ պարուն մինչև 'ի սահմա_նակցութիւն նահանգաց Խոնիբոնի և Մարաշոյ, բաւիղ իմն է բարձանց և փորոց, ընդ որ ընթացին՝ լեռնահո_սան վտակացն, և մարգիկ՝ առ գիւս բոլոց ծածկելոց 'ի նոսին և յայլ այլում՝ բազմաց են հանք անդից դժուա_րագնացս, և հանգոյնս գետ ևս անդրադարձելոցս 'ի հարա_ւակողմանն՝ չորք զրահականն Կիլիկիոյ: Երկիրն նուա_զեալ 'ի բաւականութենէ քան զայս կողմն՝ առաւելու ճոխութեամբ հրաշալեաց նիւթոց, զորոց և 'ի բնագրու_թեանս եղեն բանք: Եթէ անդստին յաւուրց Հռովմայե_ցւոց ինքնակալութեան՝ գոյր անդաւադարձ 'ի լեռնա_ստանս յայս, յաղագնեն քաղաքք կամ աւանք անունք՝ նշա_նակեալք 'ի հին գրչաց իբրև հանգրուանք և իջևանք արա_հետ պողոտայի, որ 'ի Կեսարիոյ կամ յԻկոնիոնէ տա_



31. Ակնայ.

նէր 'ի Տարսոն, և յիշեալքն լոկ կարգի տեղագրու_թեանս, զոր սկսանիմք արդ 'ի սահմանաց անտի՝ ուր դա_դարեցուցաք՝ 'ի հովտին Կիւդնոսի, այն է 'ի հիւսիսոյ կողման Դրանցն Կիլիկիոյ. զի և անտուստ սահմանօք 'ի վերոյ Թէքիրոյ և ամրութեանց հաստատելոց յԻպղաահեմ փաղչի, անդրադարձին հովիտք երկոցուն գետոց մեծաց, Կիւդնոսի և Սարոսի. յետոյ ապառաժին վերին մասն կածանին՝ որ ընդ մէջ Կունկլեաց և Պոզանթեաց. և վտակ մի փոքրիկ նովին ուղղութեամբ անդէն իջանէ ընդ հիւսիս՝ 'ի գետն յարին անդուստ, ընդ մէջ Ակնայոյ եր_

կայնաձիգ լերին յաջմէն՝ որ է յարևելից, և Արմաձրկ լերին[1] յաճեկէ՝ յարևմտից, որոց ընդ մէջ ստորոտիցն են անցքն Ներքուղի. է և նեղուց մի Փէլէմէտիկ պօղազի կոչեցեալ կամ Փէլաւնալիկ, յանուն մեծի լերին որ կարծեցաւ խորագոյք չիջեալ հրաբուղխ[2], 'ի միջոցի (հիւսիսային սպառուածի) Անաշայ և բարձու Աղ-տաղ (Սպիտակ) լերին, յորում ճարակին քօշք և ընձառիւծք։

Ջեզերբ վտակիս 'ի հիւսիսոյ Թէքիրայ՝ ընդ մէջ կապանին և Անաշայ լերին՝ են արօտավայրք Փիզիձիկ? կոչեցեալ, և ջրաղաց մի առ նովիմբ։ Ի կրաքարուտ լերինս կապանին և 'ի խառնաձոյլ խառոյի ձորոյն, որպէս և առ պահակաւն Կիլիկիոյ, գտանին քարացեալ ժժմակք պարուրաձևք և սանդրաձևք[3], և խեցեմորթք նմանատեսակք գտելոցն 'ի լուսնյական գետինս Հնդկաց աշխարհի։ — Ժամու հեռի 'ի Պոդանդեայ 'ի գագաթան սեպացեալ լերինն Անաշայ՝ կանգնեալ կայ բերդ համանուն Անաշա-գալէսի 'ի 4000' բարձու, որ է 1750' բարձր յերեսաց գետոյն, հանդէպ Ագտաղ լերին (յարևմտից), տաշածոյ սեաւ վիմօք, հանգոյն բերդին Կուկլակայ, յոր հանէ քարակտուր ուղի 'ի միջի չոճեաց, և երկու դրունք մուծանեն, մին 'ի ստորոտ գահաւանդին։ Ցանջատ քարաժեռի ուրեմն կարկառելոյ 'ի վերոյ քան զգահն՝ յոր բերդն կառուցեալ է, երևին խուռն խաչքանդակք մանունք, զոր եւրոպացի ուղևորք համարին Խաչակրաց յիշատակս, որք և զամենայն այսպիսիս՝ նոցա ընծայեն, որպէս Թուրքք՝ զամենայնն Ճենովացւոց։ Ընդարձակ է բերդն, երկայնանիստ ըստ դրից գագաթան լերինն, պարիսպքն տակաւին կանգուն, բաց յարևելից և 'ի հարաւոյ կողմանցն, ուր անմատոյցք 'ի բնէ՝ չունէին պէտս ձեռագործ ամրութեան. ըստ ձևոյ աշտարակաւոր պատուարացն՝ Բիւզանդացւոց ժամանակի գործս համարի Լանկլուա. չորք հզօր աշտարակքն կամ բրգունք, երկաթեղէն դրունքն, հանդերձ վեց մարտկոցօք, ամբարանոցօք, և քարափոր կորիք ջրոց, չէն էին և յառաջին քառորդի դարուս. ագուգայ մի հանէր 'ի մէջ բերդին, միւս ևս ածէր մինչև 'ի պարտէզն, երկոցուն ևս 'ի լերանց հաւաքողմանն բերելով զջուրն։ Առ ստորոտով բերդին յարևմտից հիւսիսոյ՝ սակաւուք հեռի կայր գեօղն Անաշա՝ 'ի դիտակ բարձրատափի 'ի միջի պարտիզաց, բնակեալ 'ի Թուրքաց և 'ի Հայոց, առ աւերակօք վաղեմի շինի և եկեղեցւոյ մեծի, զոր առէին դչխոյի միոյ կամ դստեր Թագաւորի շինեալ 'ի դարձին յուխտէ Երուսաղեմի։ Աղբիւր մի է առ աւերակօքն յոյժ ցրտաջուր ամառանի[4]։ — Աներկբայապէս մի 'ի նշանաւոր բերդորայից Հայոց եղեալ թուի սա, այլ ոչ յիշի 'ի գիրս այսպիսի անուն. իսկ մերձաւորն ձայնիւ Անդաւշծի բերդ ըստ դաստակարգի անուանց այլոց բերդորէից՝ գուշակի 'ի ծովեզերս Կիլիկիոյ լինել. բայց եթէ այլ ինչ անուն կրէր առ մերայովքս, ոչ կարեմ գուշակել, մինչև թէ ոչ մանրքննեսցի տեղին, գուցէ արձան ինչ ցարդ պահիցէ զանունն։

Ջայլոց ամենայն առ 'ի նախնեաց յիշելոց բերդորայից հաւաստեաւ կամ կարծեօք կամ ըստ պատեհի՝ նշանակեալ եմ զանուանս յընթացս տեղագրութեանս. զառկաւս ոմանս ոչ կարացեալ և ոչ միով իւիք նշանակաւ պատշաճել ուրեք. որպիսի է և անուանեալն Միքայէլկլայ, որոյ տէր յիշի 'ի ժողովս Սսոյ և Ադանայ, յամս 1307-16, Ռեմոնդ Սենեսջալ Հայոց. որոյ և օր վախճանին նշանակի յարքունի Յայսմաւուրս, յ'17 յանուարի. և էր սա որդի Հեթմոյ, որդւոյ Մարեմայ՝ քեռ Ա Հեթմոյ Թագաւորի, և Յովհաննու Իպլինայ կոմսին Յոպպէի։

42. Առ դարձուածով մեծի կածանին 'ի հարաւոյ ընդ արևմուտս, յարևելեան ստորոտս Արմաձրգ լերին, յանձուկ վայրի շրջապատելոյ 'ի լերանց, կայ Պոդանդի հանդըրուան, իջևան և բաժտուն։ Ծանօթ էր տեղիս յաւուրց Բիւզանդացւոց և Հռովմայեցւոց, և մի 'ի հանգուցից մեծի պողոտային՝ որ ընդ մէջ փոքուն Ասիոյ և Ասորւոց. և կոչիւր Պոդանդոս, Ποδανδός, Ποδενδός կամ Ποδανδεύς, ըստ Լատինացւոց Podandos, և այլայլութեամբ՝ 'ի միջին դարս՝ Podando, Poduando, Opodanda, Botentron, Budrente, Bothrembrot, Botrantos, Botrentroch, և յարևելեայց Պոտռենտոռն և Պատենտոռն։ Ըստ հին մղոնաչափութեանց՝ 23 հռոմայական մղոն հեռի է 'ի Փաւստինուպօլսէ, որ է այժմեանս Փասմագձը. և հաշուէր յայնժամ Պոդանդոս ընդ Լուլուայ՝ 'ի ծագ սահմանաց փոքուն Կապադովկիոյ[5]. և վասն դժնդակութեան դրիցն՝ խստան իմն վայր համարեալ էր, ըստ բանից Ս. Բարսղի 'ի թուղթսն, Լակոնացւոցն Կէադեան խոշերական խորոց նմանեցուցանելով, ուր զամբարիշտսն առնէին ընկեցիկ, և ժանտաշունչ Քարոնեան վիհից[6]. քանզի յայնմ ժամանակի մեծ մասն ծերակուտի Կեսարացւոց քաղաքին՝ գժտեալ վասն յերկուս Թեմս բաժանելոյ Կապադովկիոյ՝ խոյս տուեալ էր 'ի Պոդանդոս. սակայն և այս իսկ գործ ծերակուտին ցուցանէ՝ զի կարևոր և ոչ աննշան ինչ էր տեղին. զնոյն յայտ առնեն և յետագայ դէպք ինչ՝ յաւուրս հակառակամարտութեան Բիւզանդացւոց և Արաբացւոց. քանզի զօրավար սոցա Մսլիմ, 'ի սկիզբն Ը դարու (708), յետ նուաճման Տիանեայ՝ էառ և զՊոդանդէ։ Միխայէլ Ասորի 'ի յիշելն զայս՝ Պօտանդոյ քաղաք կոչելով, նախադասէ և զնուաճումն Ճռճում բերդի. որոյ՝ զի անյայտ են դիրք՝ համաբելով ոչ հեռի 'ի Պոդանդեայ, արժան համարեցաք նշանակել աստանօր։ Ի Պոդանդոն մեռաւ եւ Մէմուն մեծ ամիրապետ յամի 833, և բարձեալ թաղեցաւ 'ի Տարսոն. յետ քառասուն և աւելի ամաց (876), առ Ա Վասիլ կայսերբ՝ Անդրէաս Սկիւթացի զօրավար նորին՝ եհար զբազմագունդ բանակ Արաբացւոց՝ մեծաւ հարուածով. յորմէ զերծեալքն փախեան 'ի քաղաքն, իսկ յաղթողն

1 Այս ըստ Պերալայ տեղագրութեան. Լանկլուա կոչէ Ալլահ Բէքէսի։
2 Ըստ Տէքսիայ, 215։
3 Տեսակքն կոչեցեալք Echinalampas և Montivaultia.
4 Ի 10 սեպտեմբեր 1853, ջերմութիւն օդոյ էր 22° Ռէօմ., իսկ ջրոյն 3 1/2°. միւս ևս աղբիւր է առ մզկիթին՝ ցրտագոյն ևս, 2 1/2°։
5 Կոստ. Պերփիւռ. Թեմք. Ա. Μικρὰ δὲ Καππαδοκία... καταλήγει δὲ πρὸς ἀνατολὰς μέχρις αὐτῆς Ποδανδοῦ καὶ τοῦ φρουρίου τοῦ καλουμένου Λούλου καὶ αὐτῆς Ποδενδοῦ.
6 Ὅταν δὲ Ποδανδὸν εἴπω, τὸν Κεάδαν με οἴου λέγειν τὸν Λακωνικόν, ἢ εἴ που τῆς οἰκουμένης εἶδες βάραθρον αὐτοφυές, ἃ δὴ καὶ Χαρώνειά τισι προσαγορεύειν αὐτομάτως ἐπῆλθεν, ἀέρα νοσοποιὸν ἀναπνέοντα, τοιούτῳ τινὶ ἐοικὸς νόμισον καὶ τὸ Ποδανδοῦ κακόν. — S. Basil. Ep. 74.

զուկերս անկելոց Թշնամեացն կուտակեալ՝ կանգնեաց կոթող առ նշաւակէ։ Հարիւր ամաւ ևս յետոյ (975) յիշի Զմշկիկ կայսեր սակաւուք յառաջ քան զմահն՝ անցանելով ընդ սահմանս Պոդանդեայ՝ պքանչանալ ընդ գեղեցկութիւն և պարարտութիւն արօտիցն և հօտից։ — Ի մեծրայոցս միայն Սմբատ պատմիչ յիշէ զտեղիս՝ Պուտանդէ գրելով. և 'ի Մայծառ անուն տեղւոջէ մինչև ցայսվայր՝ ասէ կոտորելով հալածեալ զզօրս Սուլտանին Իկոնիոյ յամի 1245, որպէս և 'ի վեր անդր նշանակեցաք։ Երևին ցարդ հետք հին շինուածոց Պոդանդեայ, ընդ որս և աժրակառոյց կամրջի, զոր քակեաց Իպրահիմ փաշայ 'ի ժամանակի պատերազմացն։ Զարդիս Հայք բնակեն 'ի տեղւոջս յայսմիկ։

Ցանուն Պոդանդեայ կոչի երկար կապանն որ դառնայ յարևմուտս. և մասն մի ևս փոքր ընդ արևելս՝ մինչև յեզր Գորգունի գետոյ, իբրու վեց մղոնաւ չափ պատելով երկուստեք զլերամբքն. յորոց 'ի ստորոտս՝ փարսախաւ հեռի յելից Պոդանդեայ՝ կայ գեօղ կամ հանգրուան մի Նկօպէգ ? անուն 'ի 1460 Զ. բարձու, ոչ գիտեմ որպիսի ինչ. նոյնքան հեռի է և յարևմտից Ագտաղ լերին. յորոյ յարևելեան հիւսիսային ստորոտս՝ մինչև 'ի յիշեալն Գորգուն գետ՝ տարածանին կապարահատքն Արփա–ուչուրումու (Գարեվախք), 'ի 1174 Զ. բարձու։ Լեառնն Սպիտակ անուն բարձր իբրև 6000′, բերէ զձև կիսատ բրգան. արևմտակողմն զաձուտ և կրաքարուտ է, հիւսիս–արևելակողմն հերձաքարուտ և պորփիւրեայ. 'ի միջոցի կըլցուածոյ երկատեսակ զանգուածոյն (կրոյնոյն և հերձաքարի) ծաւալեալ է կապարաբեր երակն երեք կամ չորս բնամղոն երկայնութեամբ. մի միայն է գլխաւոր քանն, այլ և մերձ 'ի գագաթն լերինն բացեալ են երկուս գուբըս. ընդ կապարոյ երևի և կաւ երկաթաբեր։

Փարսախաւ չափ ևեթ 'ի հիւսիսոյ Պոդանդեայ դառնայ կածանն ընդ արևմուտս, առ հարաւային արևմըտեան ստորոտով Գարդնձա լերին, քերելով զաջակողմեան եզերբ գետոյն, որ 'ի սկզբան Դարպաս կոչի, 'ի ստորևն Զագըրտ, այլ և Ագսու [1]. 'ի վերայ սորա 'ի դարձուածի անդ արկեալ է սրակամար կամուրջն (Սպիտակ) Աք քէօփրիւ, և 13 Զ. բացուածով՝ կարակնէ զլայնութիւն կապանին հերձելոյ 'ի կրային զանգուածի, յորում երևին և գեղեցիկ կիճք՝ այլ ոչ կարծրակուռք, յաջմէ գետոյն 'ի լերին բարձու. յահեկէն են լերինք ցածունք պորփիւրեայք։ Կամուրջս այս սահման հատանէ երկոցուն նահանգաց՝ Ադանայ և Իկոնիոնի, որպէս առնէր 'ի հնումն Պոդանդոս. նոյնպէս և յառաջին կէս դարուս՝ յիշխանութեան Մէհէմմէտ Ալեայ կուսակալի Եգիպտոսի և Օսմանեան Դրան։ — Ցիշի և աղբիւր մի մերձ 'ի կամուրջս յայս՝ Շէքէր պուհար, شکر بکار , որով զլաւութիւն ջուրցն յայտ առնեն Թուրքք, և բղխէ առ ստորոտով լերին միոյ։ Ընդ մէջ Սպիտակ կամրջիս և Պոդանդեայ՝ էին անուանեալ Արօտք Բաւմազաւ Օղլու Թիւրքմէնից։ Հանգոյն Կուկլակայ մեծատեսիլք են և սահմանք Պոդանդեայ և բովանդակ կածանն, անտանկուիւ վախիւք և բարձամբք, հոծեալք մթագին մայրեօք և նոճեօք, սակաւ ուրեք և կաղնեօք, յորոց հատանեն և տանին փայտ յԱտանա։

Զորիւք մղոնօք յարևմտից Սպիտակ կամրջի կայ միւս ևս (փայտեայ) կամուրջ, Թախթա–քէօփրիւ, քարեղէն խարսխօք, առ երի հնագունի կամրջի, համանուն հանգըրուանաւ կամ իջևանաւ, որ և կարևոր տեղի է դհանապարհայն կապանին Կուկլակայ. քանզի աստուստ ճեղի և լեռնուղի մի ընդ արևելս՝ գնալով 'ի Գորգուն գետ, և անցանելով ընդ այն՝ ելանէ ընդ արևելս հիւսիսոյ՝ 'ի բովս փօղ–մատէն կոչեցեալ, և ընդ այլ ուղի՝ 'ի կողմն հիւսիսոյ 'ի Պէրէքէթլի մատէն, և այլուր ևս։ Մերձ 'ի կամուրջս յայս՝ յապառաժի ուրեք կայր շինուած մի, Թերևս բերդ՝ Սանտըքլը صندیقلی կոչեցեալ յետիպէ, առ որոյ պարսպօք հոսի ասէ գետակ մի։ Դարձեալ առ այսու կամրջաւ մտանեն 'ի գետն Պոդանդեայ (Զագըրտ) երկուստեք օժանդակք, յահեկէն՝ որ է 'ի հիւսիսոյ՝ Գըրգ–կէչիտ, զուգեալ 'ի գետակաց Փաւստինոպօլեայ և Եօձէլէի, (զորոց յետոյ լիցին բանք), յաջմէն՝ 'ի հարաւոյ՝ Օրուս կամ Հորոս գեղջ, յանուն փոքու վտակի, որ երկու մղոնաւ չափ 'ի հարաւոյ կայ կամրջին, և իբր չորիւք՝ յարևմտից Պոդանդեայ, յ'3500′ բարձու, 'ի միջի այգեաց և մրգաբերաց, և առ երի պուրակաց գեղեցիկ մայրից, գիհեաց բարձանց և եղևնեաց։ Ի հարաւոյ ձորահովտին Հորոսի կանգնեալ կան բարձրաբերձ լերինք Գահուն Կիլիկիոյ. 'ի հիւսիսոյ՝ կրաքարուտ լեառն Գիզըլ թէփէ 8500′ բարձր, առ որոյ ստորոտովք են ակունք գետակին՝ ոչ հեռի 'ի Գարակէօլ և Փօշան լճակաց։ Դալարաւէտք են կողք և սահմանք լերինս, ազգի ազգի վայրենի ծառովք, այլ ոչ մեծամեծովք՝ որպէս 'ի հարաւակողման Գահուն Կիլիկիոյ։ Ոչ սակաւ լեռնային բոյսք և ծաղկունք՝ երկիցս հրաւիրեցին այսր զծանօթ բուսաբանինն Քոչի, որ և գիշերօթեաց իսկ անտանօր՝ 'ի բարձունսն, ('ի գիշերի 19–20 ամսեան յուլիսի, 1853). 'ի բարձրագոյն կողմանսն եգիտ զբոյսն յոյժ նկունս, իբր երկու մատնաչափ լոկ բարձրութեամբ. միայն զԱղուեսաձետն սրատերև երեք մատնաչափ (Alopecorus angusti–folius Sibth.). այլ զոյն ծաղկանցն վառ 'ի վառ փայլէր. իբրև երեքհարիւր տեսակս ծաղկանց և արմատոց հաւաքեալ աստանօր՝ առաքեաց 'ի Վիեննա. յորոց յիշէ զգեղեցիկ Եղինձմայրն Թաւագլուխ (Lamium eriocephalum), և զՏերեփուկ կամ Հոռոմ–երնջան (Gentiana Boissieri), և զՄանուշակն Թաւիշակ (Viola crassifolia)։ Ցազգէ հաւուց ետես զկաքաւ կամ զաքլոր վայրի (Tetraogallus), զոր տեղացիք ուր–քէքլիկ կոչեն։ Գեղեցիկք են և արօտք տուարածիցն 'ի միջոցի լերինն և բովուց Պուլղար մաղարայ (6000–7500′), որ յելից կուսէ նորին և 'ի մտից Հորոս գեղջ, ազգի ազգի ալպեայ բուսովք, որովք բարգաւաճ երևի և լեռնատափն Հասան չայըրը։

Նշանաւոր են քանք մետաղին՝ վասն խառնութեան ընդ արծաթոյ, յոր սակս հաստատեցան ոչ սակաւ շինուածք և բնակարանք զնովաւ. ուր գործաւորքն դադարեն ամարանի, իսկ 'ի ձմերան իջանեն 'ի զնստագոյն կողմանս ձորոյն. աստ ագաւ և Քոչի յառաջին աւուրս ամսեան օգոստոսի (1853). քննեաց և զքանսն, որոց մեծագոյն

[1] Էտիոյ՝ Գըրգ-կէչիտ կոչէ զգետն մինչև ցՍպիտակ կամուրջն, յետ խառնրդոյն ընդ Գորասուի (Գորգունի) յիշէ զՉագըրտ։

էր 'ի հիւսիսային դիմի քարալերին, յորում խնամով հատեալ կայր սանդուղ 'ի վիմի և 'ի չիկագոյն հողի. յայսմ և 'ի կարմրագոյն ևս հողի՝ գտանի արծաթն ընդ կապարոյ և սակաւ ինչ ոսկւոյ. այլ գլխաւոր զանգուածն է սեաւ երկաթաքար։ Մի 'ի քանիցն պեղելոց էր 18 Զ. երկայն և 6-7 լայն, ուր վաստակէին չորք գործաւորք Յոյնք եկեալք 'ի կողմանց Պոնտոսի և Լազիկայ։ Էն և 'ի վերայ սոցին այլ գուբք յ'8000′ բարձու, ուր միայն ամառանի պեղեն։ — Գետինն խոնարհի ընդ արևմտակողմն Կարմիր Սարի (Գզըլ Թէփէ), և մինչև ցՄէտաէսից՝ բարձրագոյն կատար գաւուն Կիլիկիոյ՝ գրեաթէ համակ ձիւնապատ է, և յերկուս կտրեալ հովիտս՝ երկայնաձիգ լերին քամակաւ. յարևելակողմն տարածանին՝ ժամաչափ և կէս գնացիւք՝ յուռթի արօտք, լաւագոյն համարեալք քան զամենայն արօտավայրս Տաւրոսի, և բովանդակ 'ի առձիկ կամ 'ի կալուածս կարգեալ մետաղահանիցն, ընդ հրամանաւ ոստիկանի Կիւլէք մաղէնի։ Առատ է լեռնածաղիկ բուսաբերութիւն կողմանցս, սկսեալ 'ի սահմանաց Բօզանայ, որ 'ի հարաւոյ կուսէ. բուսաբոյսնն յիշէ[1] հանդերձ այլովք՝ զՀայկականն Առնասպար (Androsace Armena Dub.), և զֆլոմիս Հայկական (Phlomis Armeniaca W.) 'ի ձիւնապատ հովտին, զոսկեգոյն Խառածաղիկն նկուն. ուր և նորատեսակ Բղտափուշք կամ վայրի կանգառք գունագոյնք և ապաքատակք. 'ի Կարմրասար լերին 'ի ճարակէ արօտականաց զերծեալ տեսան Առիւծագի զոճմորուաձև (Orobanche Epithymum D.), Խազիրան նկուն, կատարագեղ Քէօլերիա (Kœleria cristata), Մատիտեղն երկտեսակ (Polygonum Aviculare և Olivieri). 'ի մարգձակս գետականն՝ Պապունիճ բոլորչի, Լերդախոտ ճախնային, Կտաւատ, Տերեփուկ գեղեցիկ կապուտածաղիկ (Gentiana Boissieri), և այլք յոլովք։

43. Երիւք մղոնօք ևս յարևմտից կուսէ փայտեայ կամրջին, յաջեակ գետեզեր Պողանդեայ՝ կան Ջերմուկքն Ըլըճա[2], 'ի խոռոչի ուրեք, և հօսին 'ի խաւխաւ հերձաքարուտ տափարակի, առ ստորոտովք պորփիւրեայ լերանց։ Ծանօթ էր տեղիս և առ Հռովմայեցւովք. 'ի հաչակաւոր ճանապարհացուցի նոցին՝ որ Պեւտինգերեանն կոչի, կարգի տեղիս այս յառաջ քան զՊողանդոն իջևան, Ջերմաջուրք անուանեալ, Aquæ calidæ, հանդերձ նշանակաւ բաղանեաց, որ և յայտ առնէ զախտահաւակ բնութիւն ջուրցն, վկայեալ և 'ի յետնոց։ Փռանկ ուղևորն Պըլոն՝ յամի 1548 անցեալ ընդ այն՝ նման գըտանէր զՋերմուկն և զաղբերավայրն՝ ծանօթ ջերմըկի հայրենեաց իւրոց Գլերմոնի, բնական կամրջաւն 'ի տոփաքարի[3]. այլ 'ի նորումն՝ Տէվիս նման գտանէ ջերմկաց Էս-լա-Շաբէլի։ Կամարայարկ է այժմու բաղանիքն, իբր 40′ երկայն, 24′ լայն և 6′ խոր աւազանաւ, յոր մտանէ ջուրն 33° Ռէօմ. ջերմութեամբ՝ ընդ անկիւն մի, անհոտ, անհամ և անմրուր։ — Առ սահմանօքս կարգեալ էր Օսմանեանց պահակս և մարտկոցս յԵգիպտական պատերազմին՝ ընդդէմ պատրաստութեանցն Իպրահիմայ, որք փոքր մի 'ի ստորև սկսանէին։ — Մղոնաւ կամ սուղ աւելի 'ի Հր. Մ. գետոյն յանկեան խառնրդոցն ընդ Էչէօձէլէ կամ Էյլիօճա գետակի՝ որ յաջմէն և 'ի հարաւոյ, կանգնեալ է հին իջևանատեղի կամ հանգրուան՝ Ջիֆտէ խան կոչեցեալ, յ' 744 Զ. բարձու. Chefete-camp գրեալ 'ի Պօղ-Ղուկայ 'ի սկիզբն ԺԸ դարու. երկու խանք կամ կարաւանատունք էին անդ, վասն այնորիկ էառ զկոչումն։ — Աստանօր Ֆիշէր զօրապետ գերմանացի հաստատեաց ամրոցս 'ի պէտս Օսմանեանց ընդդէմ եգիպտական բանակին, պատնիշափակ արարեալ զձորամէջն և զերկուստեք բարձունս, յորս և բաղխոցս կանգնեաց, արկեալ և կամուրջ 'ի վերայ գետոյն. քանզի անձուկ և դժուարագնաց կածան է տեղին, և աստի ցկամուրջն Ապխտակ (Աք-քէօփրիւ), ձորն՝ միայն 110-200 Զ. լայնութեան ունի։ Ընդ մէջ Ջիֆտէ-խանի և փայտեայ կամրջին բաղխեցան (15 Հուլս. 1832) Օսմանեանք՝ որոց առաջնորդէին Աւիշ փաշայ Իկոնիոնի և Սատըգ փաշայ Տարսոնի՝ ընդ Եգիպտացիս, և յետս նհանջեցան 'ի բուն բանակի իւրեանց յՈւլու գըշլա, և զայն ևս լքեալ ընկըրկեցան մինչև յԻկոնիոն։ Ի ժամանակի յիշեալ պատերազմին՝ անցանելով ընդ Ջիֆտէ-խան հաչակաւորն յապայն Մոլդքէ՝ գրէր այսպէս. «Մեծ ժրութիւն կենաց էր անդանօր. երկրքին իջևանքն մերձ 'ի կամուրջն՝ » նորոգ կազմեալք՝ պատսպարէին զգործաւորսն պարա» պեալս 'ի ծածկել բլուր մի տափարակ, որ նշմարիւր 'ի » բացեայ 'ի ստորև ձորոյն. հնչէին լերինք 'ի կոփիւնս » կացնոյ փայտահարին և 'ի գրգիւն թաւալման կոճեղայց » բարձրաբերձ եղևնեաց։ Այլ յայսմ տեսարանի գործօ» նէութեան՝ 'ի զուր որոնէի զգործավարն ». խնա գնոյն ինքն զՖիշէր, որ ջերմամբ տագնապէր յիջևանին։ — Գետակս որ առ Ջիֆտէ իջևանաւ խառնի ընդ Գարպասայ՝ յոմանց կոչի յանուն գլխաւորի լերանց կիլիկեան Գահու՝ Պուղղար, յայլոց Աչակուէա[4] կամ Էյլիօճա[5], յանուն երկուց փոքր գիւղից որք կոչին Վերին և Ստորին Աչէօձէլէ, և Թուին Ալաճալը, կամ Աչի Հօճա[6], կամ Հաճի Աչի[7]. և յարևմտից դառնայ յարևելս զուգահեռական իմն բարձրաբերձ լերանց պարուն, ընդ զառ 'ի վայր իջանելով ուժգին ընթացիւք, և հոսանս և ջրվէժս գործելով, ընդ խորաձոր զաճային և կրային դեղնորակ գետնոյ, զոր ուրեք ուրեք ընդմիջեն խարակք պորփիւրեայք, օձաքարեայք և երկդիմակք (amphiboliques). և մղոնաչափ մի ևեթ 'ի բացեայ 'ի հիւսիսոյ բերանոյ Հորոս գետակի՝ թափի ի Գարպաս (Զագըտ)։ — Ի միում յերկոցուն գիւղից կարծեմ զմնացուած չքնաղ բիւզանդեան եկեղեցւոյս, զոր յԱչաճա գեղջ Տաւրոսի՝ առէ Լանկլուա, և ոչ նշանակէ յորում կողման։ Հնագոյն և նորանշան ևս մնացուած վաղեմի ժամանակաց և ազգի անծանօթի՝ ցուցանէ արձանքանդակ մի[8] 'ի քարաժեռի մերձաւոր լերին միոյ, որ և յաւէտ նշանագիր երևի քան ձայնա-

1 Քոչի երկար թուէ և նշանակէ (յէջս գրոցն 176-183) զբոյսս կողմանցս՝ որ ընդ մէջ Բօզանայ և Գըզըլթէփէի, քանից Պուլղար Մաղարայ և հիւսիսակողման նոցին։

2 Լանկլուա (Բ. 73.) յանցանելն ընդ այս, 'ի 27 Նոյեմբերի, 1853, կամեցեալ ըմպել 'ի ջրոյն՝ գիտաց զի ջերմուկ է։

3 Bains de l'Alyre կոչին ջերմուկքն այն Գլերմոնի։

4 Լանկլուա, Բ.։

5 Քոչի։

6-7 Ֆիշէր և Ջիհաչէֆ։

8 Տես յէջ 156։

գիր։ Նշանաւոր է և այն՝ զի Յոյնք մերձաբնակք, որք և մետաղագործք, ասին հնալուր բարբառ ունել քան զայժմու սովորականն։ — Անձուկ և երկայնաձիգ է գետաձորն ընդ արևելս կոյս հակեալ, բարձր և՝ քարուտ յոյժ 'ի վերին (յարևմտեան) կողման, վասն որոյ և անփայտ. այլ լեռնական ծաղկօք և բուսովք մարթէր լնուլ զփափագ բուսաբանին, եթէ չէր անագանեալ գալուստ նորա (4 օգոստ. 1853)։ Ի կանխագոյն եղանակի եկեալ այսր Չիհաչէֆի, հանդերձ այլովք՝ նշանակեաց զՈլիմպեանն անուանեալ գառնադմակիկ (Sedum Olympicum)։ Միջին և ստորին մասն ձորոյն մացառուտ է. ծառոց սահման հասանէ ց'7000' բարձրութեան, մեծամեծացն ց'6500'։ — Նշանաւոր տեղի և բերք ձորահովտիս են՝ մեծ կապարահատքն Պուղղար մատէն, մերձ 'ի գետակունսն, ուր և գեօղ հաստատեալ է Պուղղար տաղ անուն 'ի 1483 Զ. բարձու, 'ի հիւսիսային ստորոտս լերինն՝ յորմէ բովանդակ պար լերանցն Պուլղար կոչի. և է բացակայ 14 բնամղոն յարևմտից Չիֆտէ-խանի, 30 'ի Պոզանտեայ, 36 'ի Գարեմախից (Արփա ուչուրումու), 52 'ի Պաշակէն Կիլիկիոյ, 110 'ի Տարսոնէ։ Որպէս և յայլ բոլս լերանցս՝ հանքն է ածղուտ հողային կապարի, և գտանի 'ի կրային զանգուածի և յերկաթային կարմրագոյն կաւի. թուի հարուստ լինել մետաղին 'ի խորս, որոյ միայն վերին երեսքն պեղեալ են. 13 քանք պեղէին



32. Եկեղեցի աւերակ յԱլաճալը.

յամի 1866, յութ բնամղոն միջոցի՝ 'ի Պուլղար գեղջ և 'ի Կարմրասար լերին. այլ յառաջն երբեմն ասեն անդրագոյն ևս մինչև 'ի Չիֆտէ-խան, այլ և ցՓայտեայ կամուրջն. և են դրիւք վերագոյն քան զձորահովիտն՝ 300–800 Զ. մերձագոյնն 'ի գեօղն՝ ըստ Չիհաչէֆի՝ բարձր է 2096 Զ.։ Ամարանի միայն վաստակին 'ի մետաղսն, 'ի մայիսէ ցելս սեպտեմբերի. զի սաստիկ է ցուրտ տեղեացն, մանաւանդ առ Կարմիր-սարիւ, ուր երկու քանք են բարձրագոյնք քան զայլսն և առատագոյնք։ Փոքր ինչ 'ի հեռուստ հայթհայթի փայտն՝ 'ի պէտս բովուցն, յեղևնեաց և շոճեաց, զի անծառ են մերձագոյն սահմանք կապարահատիցն, և այնու գործեն և զածուղն։ Գործաւորքն՝ որպէս և յայլ կողմանս՝ Յոյնք են, ոգիք իբրև եօթանասուն։ Յամին 1876 գլխաւոր գործաւորացն էր Գանթարճի Ճորճի ոմն, որ և ասէր (ցՏէվիս) զտարեկան ծախս պետութեանն վասն հանից կապարի

և արծաթոյ՝ 24,000 լիրայ օսմանեան, զլաշն 50,000. և թէ տրամ մի արծաթոյ զտելոյ արժէր 32 փարայ, իսկ 32 փարայի կապար՝ կշռէր մի հօխա։

Տեսարան կարի ահաւորագեղ ընծայեն սահմանք կապարահատիցս. քանզի հազիւ երեք կամ չորք մղոնիւք 'ի բացէ կան 'ի հարաւոյ կուսէ բարձրաբերձ լերանց Պուլղար պարուն, որոց գագաթունք լերկք կամ ձիւնապատք՝ այլ կողք ոչ յոյժ դժնեայք երևին. իսկ միջոցն՝ հովիտ գետոյն՝ յոյժ զուարճալի և դալարաւէտ, ուր և բնակութիւնք ցրուեալք 'ի միջի պուրակաց մայրեաց և մարմանդից։ Լերինքն՝ անմատոյց թուին 'ի հիւսիսային դիմաց անտի՝ որ հային 'ի քաղաքն, այլ 'ի հարաւոյ կուսէ ելանելի է և բարձրագոյնն անգամ Մետտեսիզ, ընդ ճանապարհ Կիւլէք մաղարայի, ընդ Ջինալիճն (Գարըլը կէօլ), Պաշ-օլուգ և Քէշի-պէլի, և ընդ Նաագագաթն (Իւչթէփէ). ընդ այս՝ ճանապարհ արար և ել 'ի լեառնն՝ Քոչի բուսաբան, 'ի 29-30 յուլեայ 1853 ամի, որպէս և յառաջ քան զնա՝ սպայն Ռուսսէկկէր. և եգիտ զհիւսիսակողմն լերինն վախուտ ց'2000', 'ի ստորև ձիւնապատ, և ուրեք ուրեք սառնապատ, մանաւանդ առ աղբերբն՝ որ բղխեալ 'ի միջոյ ձեանց հոսէ և պաղի։ Սուղ 'ի ստորև գագաթան լերինն՝ որ 'ի հարաւային կողմանն է, և յոյժ հերձակտուր խիտ ապառաժ կրային, զառաջինն եգիտ զբոյսն Հելտրայխիա. յորմէ ոչ կարի ստորև մերձ 'ի 11,000' բարձունս երևեցան 'ի սորս ժայռիցն՝ Խազիրան մաշկեար, *Ծնուկ (Ajuga Chia), և վերագոյն ևս՝ Նունուֆա կարմրորակ, որոյ միւս ևս այլ տեսակ սուղ ինչ ստորև. և բարձրագոյն բնաւից՝ Վառվռուկ արծաթածիլ (Alyssum argyrophyllum)։ Յայտ է թէ յոյժ մեծաքանչ և ընդարձակ է շուրջ տեսարանն 'ի գագաթանց այսպիսւոյ լերին. որոյ առընթեր՝ յարևելից՝ ամբառնայ 300' սրակատար բրգամբ Ջօպան-գուլու? լեառն՝ սուղ ինչ պակաս բարձրութեամբ քան զայն, և երևի 'ի Տարսոնէ. սմա ընթերակից է լայնակողն Արփալըգ և հաւասար բարձրութեամբ, իբր



33. Արձանաքանդակ մերձ յԱլամալը. (Տես յէջ 134)։

11,000'։ Ի հարաւոյ կուսէ Նշմարին բովանդակ զաուիվայրեալ աստիճանաձև զահաւանդքն՝ մինչև 'ի դաշտավայր երկիրն և 'ի ծովափունս։ Ի հարաւոյ գերածայրեալն Մէտտէսիզի ամբառնայ Նաագագաթն այն (Իւչթէփէ) լեառն 10,000', լայնատափ և ապառաժուտ, յահեկէ ունելով զՊաշ-օլուգ, և յաջմէ՝ զյոյժ դժնդակ քարաժայռն Թէք-գայա (Միաւոր սար), ապաւէն քօշից. և մի ըստ միոջէ լերինք և լեռնակք՝ զորս յիշեցաք 'ի հովիտըս օժանդակաց Կիւդնոսի, և ապա անտառքն և պուրակք, և 'ի ստորև՝ դաշտն լայնածաւալ, և ծովն իսկ. յորում մարթ է զուգադիտակաւ և քաջատես աչօք իսկ՝ նշմարել և զԿիպրոս կղզի՝ իբրև տախտակ մի սեաւ։ Ի հարաւոյ արևմտից՝ Նշմարին անտառք Լամբրունի, և արևմտագոյն ևս լիճ մի։ Հիւսիսակողմն՝ զառաջինն վախըս և անդունդս ահաւորս երևեցուցանէ, և սառնամած կամ ձիւնապատ հովիտս, յորս հանապազ մնչեն մըրրիկք. զուն ուրեք 'ի համասփիւռ սպիտակութեան ձեանց վերամբառնան թխակատար քարաժայռք. բայց հեռագոյն ևս՝ յերևան գան կոհակաձև դարևանդք մերկք և լերկք, պէսպէս այլատարազ կերպարանօք. Նշմարին և հետք սահմանաց ջրոց յերեսս քարալերանց, որք 'ի հալս սառամանեացն՝ անշուշտ հրաշատեսիլք և հեշտալիք են. այլ 'ի նուազել ջուրց և 'ի զօրանալ տօթոյն՝ դարձեալ անապատանայ տեսարանն, և միայն շնորհաւոր երևի Կարմրասարն և սահմանք կապարահանից Պուլղարայ։ — Յայսմ կողման՝ զուգահեռական մեծի լեռնապարուն ձգի ցածագոյն պար մի 7-8000' բարձրութեամբ՝ յարևելից յարևմուտս, ժամաչափ լայնութեամբ և վեց ժամուց երկայնութեամբ։ Անդր քան զայս ձգտեալ աչաց ընդ արևմուտս՝ 'ի սահմանս Արակլեայ՝ Նշմարեն զայգիս և զպարտէզս Պոռ քաղաքաւանի, իբրև կուտակս ինչ սեաւս, և ընդ հիւսիսի՝ զձիւնափայլ կատարս Գամրականն Արգէոսի և լիճս երկուս։ Յարևելից հիւսիսոյ տարածանին պարակիցք Պուլղարայ Ալլահ-տաղ լերինք, գերածայրեալ գագաթամբ Այիշ լերին, յորոյ յարևմտից՝ սահմանք են Պէրէքէթլի-մատէն մետաղաց, հանդերձ

այգեօք և պարտիզօք: — Ի կենդանական սեռից՝ լեռնաքնիինն միայն զարծուիս և զանգեղս յիշէ 'ի բարձունս Մէտտէսիզի, և ծառկոտոտ հաւ (pic) մի՝ 'ի վերին խոռոշս նորին. իսկ 'ի բուսականացն՝ բազում ազգս. որպէս, յանցամէջս ձեան՝ Ափուր դալար (Calamintha florida) անուշահոտ և կարմրերփեան, Մեկոն պարսկական (Papaver persicum Lindley) 'ի քարածերպս՝ եռոտնաչափ բարձր, Դժնիկ կամ յակրի սրատերև (Rhamnus cornifolia), Կոծոծ (Acantholimon) երկտեսակ, մին գեղաչնորհն համարեալ (Acath. Venustum, տես յէջ 21). 'ի քարաժեռս հարաւակողմանն՝ Դաղձն կիլիկեան (Nepeta Cilicica), Աւազուկ (Arenaria Kotschyana), և Մունբիա գնտահոծ (Munbya conglobata). 'ի քամակս և տափս, Սեաւկեղևի կիլիկեան (Scorzonera Cilicica), վայրի ցորեան (Agropyrum repens), Վարսկատար (Pterocephalus), Բզնածարիր (Hieracium Pilosella) և Քոսքսուկ: Առ աղբերօք՝ Մկնականջ փոքրագլուխ (Myosotis microcephala), Կորնգան, Հզօրի (Potentilla), Խառածաղիկ նկուն, և այլն: Ի քարաժայռս հիւսիսակողման Եռասարին՝ Ակրկարհա ծաղկեալ, Ճլեպեկ երկտեսակ, ատամնատերևն և պտղաբերն (Silene odontopetala և fruticulosa), գեղեցիկ Պորտնուկ (Omphalodes Luciliæ), Հզօրի գեղաղէշ (Potentilla speciosa), և այլն: Ի հեղեղաքարուտս Մէտտէսիզի՝ Սիսեռն սիզատերև (Cicer pimpinellaefolium), Խոզեբլընդի լիբանանեան (Scrophularia libanotica), և այլն: Ի ծերպս քարանց՝ Զամբուռ, Վերոնիկ սանդրաձև (Veronica pectinata), Աբարբիոն խիտ, Քօշմորու ծանծաղ (Hypericum crenulatum) մինչև յ'9500' բարձրութեան. և այլն:

44. Դարձ արասցուք անդրէն 'ի ձորն Դարպասայ և յուղի Կապանին, զոր թողաքս առ Չիֆտէխան իջեվանաւ. յորմէ սակաւուք հեռի 'ի հարաւոյ կողմանէ՝ և յարևմտից հիւսիսոյ Կարմիր Սարի կայ գեօղն Կեօձէրէ, Նոյնչափ հեռի և 'ի Սոորին Ալէօճէլէ գեղջէ՝ որ յայն (ձախ) կողմն գետակին. յորում կողման երիւք մղոնօք չափ յարևմտից Վերին Ալէօճէլէի, 'ի գետամէջս Պուլղարի և Դարպասի՝ կայ Կուլմաչ գիւղ: Նոյնչափ ևս 'ի սորա արևմտից և 'ի հիւսիսոյ Պուլղար մադէն գեղջ Դարպաս գիւղ, որոյ հայկական անուն տայ գուշակել և փափագել զհետաքննութիւն ազգայնոց՝ 'ի գիւտ նախնեաց ինչ յիշատակաց. զի և գետն նախ յայս անուն կոչի, ապա 'ի ստորև՝ Պօզանդի և Զագըռ. յելից սորին անցանէ ուղին որ 'ի Պուլղարոյ տանի ընդ հիւսիս 'ի Տիանա և 'ի Նիկտէ, կտրելով զպողոտայ Կապանին՝ որ 'ի Պօզանդեայ յիկոնիոն ընդ Աւակլի. յետնոյս (Աւակլեայ) սահմանորդք են յարևմտից Դարպասայ՝ գեօղքն Էմիրլէր և Քիլա քէօյ:

Ի հարաւային արևելեան անկեան կորածոյ երկոցուն ճանապարհացն և յանկեան խառնրդոյ վտակի փոքու 'ի Դարպաս՝ Նշանակի ջրաղաց մի և հանգրուան Չէյվէ կոչեցեալ. յորմէ մղոնաւ հեռի յարևմտակողմն և յաջմէ Կապանին (գալով 'ի պահակէն), կան Թապացըլը և Փօրսուզ գիւղք, առ ակամբք վտակի՝ որ անկանի ընդ հիւսիս 'ի Գըրգ-կէչիտ: Կիսով փարսախաւ յելից Չէյվէյի կայ միւս ևս ջրաղաց, և հանդէպ նորին յահեկէ գետոյն Պիրլի-Մարուչ խան հանգրուան. յորմէ երկու մղոնաւ 'ի ստորև (յարևելից) միւս ևս իջևան՝ Թօուռն-Ախան. առ որով հուն անցից է գետոյն, և մնացուածք հին կամրջոյ. ընդ մէջ սորա և Չիֆտէխանի՝ յահեկէ գետոյն են և գեօղքն Քօշաք և Սէյիտ Ահմէտ: — Իսկ յաջմէ գետոյն՝ 'ի հարաւոյ Մարուչ-խանի՝ Թէքքէ-չուգուր մեծ գեօղ. և անտի մղոնաւ հեռի յարևմտից՝ փոքրիկ գիւղն Կէմիչ: Ի հիւսիսոյ սոցին 'ի ստորոտս լեռնաբըլրոց Եըլանտաղ (Օձալեառն) կոչեցելոց՝ կայ համանուն գեօղն Եըլան 'ի 1100' Զ. բարձու: Առ նոցին ստորոտովք են և Հիսանըղագի?, երկու մղոնաւ կամ աւելի յարևելս Օձագեղջն՝ առ ճանապարհաւն. որում մերձ յարևելից և առ երի կապանին՝ Գօզլուձա, (միթէ Ընկուզուտ?), և յելից սորա Զանախճի: — Լեռնաբլուրք Օձից ձգին յարևելից յարևմուտս իբրև ընդ մղոնս ութ. առ արևմըտեան սպառուածովն յահեկէ ('ի հարաւոյ) ճանապարհին, կիսով փարսախաւ յարևմտից Փօրսուզի՝ կայ հին և անուանի աւանն Թուրքարնակ Ուլու գըշլա, قشلا اولو, ընկուզեննեօք հովանաւորեալ, յետին իջեվան 'ի սահմանի կուսակալութեան Ատանայ, որով և բնիկ Կիլիկիոյ, առ աղբերակամբք Դարպասայ. յորմէ և անդր է Աւակլի՝ վիճակ Իկոնիոն նահանգի, ուստի հաւասար հեռի է աւանս այս՝ որչափ 'ի Չիֆտէխանէ, իբրև 12 մղոն, ինն ժամուց ճանապարհ ըստ Լոտիպայ. որ ասէ երկուս իջևանատունս լինել անդ և մզկիթ մի և բնակութիւն բազում. մի 'ի խանիցն կոչէր յանուն Մէհէմմէտ փաշայի. և այս թուի ստորագրեալն 'ի Նիպուր (Niebuhr) գերմանացի ուղևորէ իբր 120 ամօք յառաջ (1766). որ և ասէ զշինուածն զայն՝ երկայն 250', նոյնքան ևս կողմնական մասամբքն, բազում սենեկօք, մթերանոցօք, մզկըթաւ, բաղանեօք, և 12 կամարակապ ախոռովք. ուր ձմերանի միայն ագանէին ուղևորք, զի ամարանի բնակիչք անգամ աւանին 'ի հովոցս ելանեն և յարօտս, և են Թուրքմանք: Ցառաջ քան զնա՝ 'ի սկիզբն ԺԸ դարուէանց ընդ այս և Փռանկ ուղևորն Պօղ-Ղուկաս, որ Ouloucouchela գրէ զանունն: Մոլդքէ՝ յամի 1838 (Նոյեմբ.) անցանելով ընդ այս և ընդ նեղուցսն՝ պքանչանայր ընդ շինուած իջեվանատանս, իբրու ընդարձակագոյն և գեղեցկագոյն քան զընաւս յՕսմանեան տէրութեան[1], յորում մարթ էցէ պատսպարել գունդ մի հեծելոց. և թէպէտ 'ի դարուց հետէ չէր նորոգեալ, այլ տակաւին չէն էր, 100' երկայն և մեծաբաց կամարօքն, բաղանեօքն և մզկթաւ. Նշանակ երբեմն խուռն և յաճախ անցուդարձի վաճառականաց. իսկ այժմ հազիւ թէ զոյգ մի գրաստուց անցանիցէ՝ բարձեալ խաղող կամ ածուղ: Ոչ ինչ ընդհատ 'ի սմանէ՝ պքանչացաւ և նոր ուղևորն Տէվիս ընդ վայելուչ շինուած իջեվանատանս, և համարէր իտալացի ճարտարապետի գործ, թերևս գերի անկելոյ 'ի ձեռս Օսմանեանց. սոքա, որպէս ասի, արդ կարգելոց էին ղտեղին 'ի կայարան շոգեկառաց: Ի պատճառս սովու 1873 ամին նուազեալ է բնակութիւն

[1] Ըստ Մոլդքէի, որ ասէ. Es ist dort der grösste und schönste Hann im Osmanischen Reiche.— Moltke, Briefe, 322.

ւանին, յորում 'ի 400 տանց մնացին 100. իբրև 1000 ոգիք մեռան 'ի սահմանս Նորին, 300 արջառք, 300 ձիք, 20,000 ոչխարք և այծք[1]: — Մերձ յաւանս յայս յելից կուսէ 'ի վերայ ճանապարհին՝ էր տեղին Քեաֆիր-սիեուի, ըստ Էտիպայ, որ նշանակէ Պարտութիւն անհաւատից, և Թուի անդանօր բաղխեալ երբեմն քրիստոնէից ընդ այլազգիս: — Նոյն այր յիշէ դարձեալ առ սոքօք և բերդ մի 'ի գագաթան լերին՝ Կէլիք անուանելով, և ասէ՝ առ աշխարհական Մէհէմմէտիւ նուաճեալ յՕսմանեանց յամի 1467-8. յիշեն և այլ պատմիչք Օսմանեանց՝ ցայն ժամանակս բերդի միոյ 'ի կապանիս Կիլիկիոյ, և այլոց ևս յայն կողմանս՝ լինել 'ի ձեռս Հայոց, յորոց Թափեալ Օսմանեանց 'ի բաց մերժեն զնոսա, զի բաժառութեամբ նեղէին զանցորդս: Իսկ յիշեալս այս (Կէլիք) մերձաձայն անուամբ՝ ոչ է բուն բերդ Դրանցն Կիլիկիոյ, զի յետոյ յիշէ և զայս նոյն Էտիպ, Թէպէտ Տուլէք գրէ كلك, կամ այսպէս ընթեռնու: Ի նորոց ուղևորաց ոչ յիշի բերդ յայս սահմանս, այլ փոքր մի հեռագոյն ընդ արևելս, մերձ վերոյիշեալ Զանախճը գեղջ՝ յելից Հր. Նորին, և կոչի Այի-հիսար գալէսի. յորոյ հիւսիսոյ կիսով փարսախաւ բացագոյն՝ 'ի ստորոտ լերին է Գալէ քէօյ (Բերդագիւղ):

45. Ջորաֆոր ԳԸՐԳ-ԿԷՉԻՏԻ. — Որպէս նշանակեցաք 'ի վեր անդր (յէջ 133), Դարպաս կամ Զագըտ գետ առ Փայտեայ կամրջաւ ընդունի յաշէկէն ('ի հիւսիսոյ) ըղգետակն Գըրգ-կէչիտ՝ յերկուց կամ յերից օժանդակաց զուգեալ, որք բղխեն յայնմ կողմանէ Դրանց Գահուն Կիլիկիոյ, այսինքն է 'ի հիւսիսոյ. և այսպէս կոչի վասն յաճախագոյն անցից վտակացն ընդ կիրճս լերանց. սակայն չեն ընդարձակք սահմանք ձորակացն, և ոչ վարուն անցք 'ի նոսին, որպէս պահանջէր արդեօք յորջորջումն գետոյն, և որ ճահագոյն է ըստ այսմ տեսութեան՝ Դարպասայ կամ Զագըտայ. և ահա զսա իսկ Գըրգ-կէչիտ կոչէ ուխտագնացն Մէքքէի (Էտիպ), այլ յայժմուս՝ ձախակողմեան օժանդակն այսպէս կոչի. ըստ այսմ համարեալ և մեր՝ գրեցաք զսկիզբն նորին զուգահեռական Դարպասայն՝ յարևմտից յարևելս գնալով զառաջինն, և գրեաթէ ընդ նովին երկայնութեան ատիճանաւ, իբր ութ մղոն 'ի հիւսիսոյ, 'ի համաքատակ երրորդակ գետնի, խուն ինչ պորփիւրեայ զանգուած և խառնաձոյլ ունելով միջամուխ առ ադրերակամբքն: Անդ է Օվաձըգ հանդրուան 'ի 1178 Ջ. բարձու. և կոչի այսպէս (Դաշտակ), զի փոքր մի լայնարձակ են սահմանք իւր, 'ի հիւսիսոյ կուսէ միայն ունելով լեռնաբլուրս հանգոյն Օձալերանցն՝ որոց և կչուակի 'ի հիւսիսոյ կան: Առ նովաւ վտակն Փօրսուգ խառնի 'ի գետակն, 'ի հարաւոյ կուսէ Օձալերանց. նոյնպէս և այլ վտակ եկեալ 'ի կողմանց Տիանեայ, (յոր տանի ճանապարհ բաժանեալ 'ի կածանէն՝ 'ի միջոյ Փօրսուգ և Եըլան գեօղից), անցեալ ընդ Օվաճըգ, ընդ պորփիւրեայ լեռնակս և ընդ իջևան մի՝ վեց մղոնաւ չափ 'ի Հս. Դաշտակին. յորմէ և անդր մինչ 'ի քաղաքն (Տիանա) հինգ մղոնաց չափ է: ՅՕվաճըգայ ընդ Եւ. Հր. Եւ. ընթացեալ գետակին իբրև ութ մղոն՝ ընդունի այլ գետակ՝ իջեալ 'ի հիւսիսոյ ընդ մէջ Տիանեայ և Պէրէքէթլի մատէն կապարահանից, բաժանելով զերրորդակ գետինն յաջմէն՝ 'ի լումայական գետնոյ ահեկէն: Ի դէպ է զայս օժանդակ կոչել յանուն Փաւլնագձը աւանի, որ երիւք կամ չորիւք մղոնօք 'ի հիւսիսոյ կայ խառնըրդոյն, և նշանակէ Կօշկապան կամ Մուճականոց, եթէ չիցէ խանգարումն փաւստինոպօլիս, Faustinopolis անուան. զի ըստ հռոմէական մղոնաչափութեանց՝ յայսմ կողման էր քաղաքդ, և մնացուածք իսկ հին և ստուար շինուածոց երևին անդ. զոր այսպէս կոչեաց յանուն կնոջ իւրոյ Մարկ. Աւրելիոս կայսր, և առ յիշատակէ նորին բնակեցոյց անդ գաղթականս, զաննշան գեօղըն փոխելով 'ի քաղաք, որ և համարեցաւ յետոյ 'ի բաժնի Բ Կապադովկիոյ, և մի յեպիսկոպոսական Թեմից նորուն, Φαυστινόπολις ըստ Յունաց և եպիսկոպոսն՝ Փաւստինուպօլեայց, Φαυστινοπολεῶς. Հանգոյց մի զօրավ արքունի պողոտային՝ որ 'ի Կապադովկիոյ տանէր 'ի Կիլիկիա, հաստատեալ էր կայսերաց աստ սուրհանդականոցս կամ ձիատուն. զայս Թուի ցարդ ցուցանել համանշանակ գեօղն Իմրախօռ, կիսով ևեթ փարսախաւ յելից կալով աւանին: — Նոյնչափ հեռի 'ի հիւսիսոյ սորա Քիւրքձիւ գիւղ. և 'ի սմանէ փարսախաւ հեռի 'ի Հս. արևելից և առ ակամբք վտակին՝ Պարաարալ? գեօղ: — Իսկ 'ի հարաւոյ քաղաքաւանին և Օձալերանց՝ յաջմէ գետակին՝ Քօրայի? գիւղ՝ փարսախաւ հեռի յարևելից Ալիհիսար բերդի և գեղջն. — երկու մղոնաւ 'ի հարաւոյ Քօթայեայ՝ Մուրատ? գիւղ. յորոյ ելից կուսէ ուղին զգետեզերբն յոյժ խոտորկոտոր է և դարձ 'ի դարձի, ուրանօր և նեղուց մի Տէյիրմէն-պօղազի (Աղօրեաց փող) կոչեցեալ. միւս ևս փարսախաչափ 'ի ստորև՝ Քէօփրիւ-տէրպէնտ (Նեղուց կամրջի). զի անցանէ ընդ գետակն՝ որ գրեաթէ նոյնչափ հեռի կայ ('ի հիւսիսոյ կուսէ) նախագրեալ Չիֆտէխանի և Ջերմկին: — Դարձեալ, նոյնչափ (փարսախաւ) կամ սուղ աւելի՝ յելից Աղօրեաց-փողոյն և 'ի մօտ լերանց անջրպետաց ձորահովտին Գօրգունի՝ Էչմալը գիւղ, ոչ փոքր. նոյնպէս և որ 'ի հարաւոյ նորին՝ փարսախաւ հեռի՝ Ճէկլէ? քէօյ. նոյնչափ և 'ի սմանէ՝ 'ի հարաւակողմն՝ Էօմէրլիւ մեծագոյն գիւղ՝ 'ի պորփիւրեայ ձորակի. որ և նովին չափով կայ 'ի Հս. Եւ. ծանօթ Փայտեայ կամրջին, և ունի պարտէզս[2]. յերկոցուն միջավայրի է գեօղիկն Աշիփր?: Յանուն Էօմէրլիւի կոչի լեռնանցք մի, Էօմէրլիւ-պօղազ, կիսով փարսախաւ յելից նորուն, 'ի ստորոտս Գարընճա լերին, որ այլովք հանդերձ անջրպետէ ընդ ձորս Գըրգ-կէչիտի և Գօրգունի[3]: — Չորիւք մղոնօք 'ի հիւսիսոյ Էօմէրլիւի՝ առ փոքրիկ վտակաւ որ խոնարհագոյն քան զՓաւստինուպօլսին Թափի 'ի Գըրգ-կէչիտ՝ կայ միւս Ճօձէկ գեօղ:

46. Ջորաֆոր ԳՕՐԳՈՒՆԻ. — Վերջին յարևմտեայ օժանդակաց Սարոսի է Գօրգունն գետ՝ արևելագոյն բնաւից նախայիշելոց, և կոչի յոմանց Գարա-սու[4], յայլոց Գարա-պունար[5], իբրու զի բղխէ յայն անուն կամ 'ի

1 Տէվիս, 228-9:

2 Ցանցանելն ընդ այն Քոչեայ՝ 'ի 4 յունիսի 1859, բերին անտի գիւղականքն կեռաս ապխտակարմիր:

3 Յետ Փաւստինուպօլսի ցայս վայր տեղագրեալքս՝ են ըստ տեղացոյց քարտիսին Ֆիշէրի:

4. 5 Էտիպ և Չիհաչէֆ:

Գըրգ պունար տաղ կոչեցեալ լերանց, 'ի 1690 Ջ. բարձու, որք նոյն կամ զուգահեռական են իւչ գաւիու լերանց, և ձգին մօտագոյն 'ի հարաւոյ արևելից վիճակին Տիանեայ, անջրպետ կալով ընդ Լիկայոնիա և ընդ Կիլիկիա. 'ի լերինս յայսոսիկ յարեալք են, թէ և ոչ անընդմէջ կցորդութեամբ՝ 'ի հարաւոյ կուսէ, Արմուտ պէլի, Քիւրտ սիվրի տաղ, Գարըճա տաղ, Գըզըլ տաղ, և անջրպետեն յարևմտից կողմանէ զձորահովիտ Գօրգունի՝ 'ի Գըրգ-կէչիտէ. իսկ յարևելից՝ անջրպետք նորին և արևելեայ զուգակ առաջին Սարոսի՝ են բարձրաբերձ և պարսպաձև անուանի լերինքն Ալա-տաղ կամ Ալլահ տաղի. յորս են առանձնակ անուամբք՝ ('ի հարաւոյ ընդ հիւսիս գնալով), Պօզ տաղ՝ սակաւուք հեռի յարևելից Գըզըլ տաղ լերին, Գարէնֆիլ տաղ, Մասմենոյ կամ Մէսմէնի կամ Մասամէնտ տաղ, ապա բնիկ Ալատաղ լեառն, Լմիկ տաղ, և հիւսիսագոյն բնաւից սրակատարն Ալփիշ կամ Ապուշ քար, որք և սկիզբն համարին յոմանց՝ մեծի Անտիտաւրոս լեռնապարուն: — Լերինք փոքունք և բարձրաւանդակք ընդմիջեն զհովիտ Գօրգունի յերկուս. զըլխաւորն և արևմտեան՝ սեփականագոյն է նմին, արևելեանն՝ օժանդակի նորուն Խօճէմիչ կամ Աճէմիչ կոչեցելոյ. զեզերբ սորին ճանապարհն տանի ընդ Հս. Եւ. 'ի Կեսարիա, իսկ Գօրգունին՝ 'ի Տիանա՝ ընդ հիւսիս, և ընդ հարաւ արևմտախառն՝ մխի 'ի հովիտ Գըրգ-կէչիտի, և հանէ յուղի կապանին առ փայտեայ կամրջաւն: Ջերկուքումբք ևս ճանապարհօք՝ զորս 'ի դէպ է կոծանս կոչել, են իջեվանատունք (խանք), աղբերք և ջրաղացք: — Առաջին յիջեվանացս, 'ի հարաւոյ սկսեալ, 'ի ստորոտս Գարըճա լերին՝ է Եօուռնլուռ խան, յորմէ և 'ի վեր ուղին գնայ զաջակողմամբ գետոյն, որ է ընդ արևմուտս, մինչև 'ի Մէյէմէնճի խան [1] կամ Գաւրըշը [2], վեց կամ եօթն մղոնօք վերագոյն, յարևելեան ստորոտս Գըզըլ տաղ լերին. ուրանօր էին իբր երկոտասան փայտաշէն տնկունք ընդ հովանեօք ընկուզենեաց և սօսեաց, բնակութիւն գլխաւորի (գայմագամ) Աֆշար տոհմին Մէլէմէնճի օղլու կոչեցելոյ, իբր 1500 վրանաց, ըստ Չիհաչէֆի, զատ յայնոցիկ որք ճարակին 'ի կողմանս Քուզան լերանց: Նորագոյն ուղևոր, յամի 1875, ասէ, մեծատան միոյ Հայոյ Ատանացւոյ հաստատեալ անդ բնակարանս կամ գործարանս (settlement). և մերձ նմին 'ի ձորակի միում յաջմէ կողմանէ՝ եկեղեցի մի ուխտատեղի Հայոց [3]: — Մերձ յիջեվանս յայս է կամուրջ որով դառնայ ուղին յարևելս կոյս, յահեակ գետեզրն, ուր Սօյալըգ գիւղ. և սակաւուք 'ի վերոյ՝ վտակ մի իջեալ 'ի Քուրտ-սիվրի լեռնէ Թափի 'ի գետն, ուր և ջրաղացք են 'ի գոգաձև վայրի. և մերձ նմին Ալճի-պէքիր գեօղ, ունելով և հանգրուան 'ի Հս. կուսէ՝ 'ի ստորոտս յիշեալ լերինն: — Ի խառնրդոց վտակին երիւք մղոնօք չափ վերագոյն՝ 'ի նմին ձախակողման գետոյն է իջեվանն Մահմուտ խան, առ որով և ջրաղաց. և նոյնքան վերագոյն 'ի սմանէ՝ Ճէնկիլ խան: Փոխան երկոցուն իջեվանացս, նորագոյն ոմն տեղագրին (Պերալ) մի միայն նշանակէ՝ Թօփուզ օղլու խան անուն, 'ի հարաւ-արևմտեան ստորոտս բնիկ Ալա լերին: Աստի իբրև ընդ հինգ մղոն ճանապարհի, աւելի կամ պակաս, յոյժ անձկանայ ուղին և խոտորնակի. վասն որոյ և սակաւուք 'ի վերոյ յետին յիշեալ իջեվանին՝ կոչի Պաշ-տէրպէնտ, (Գլխաւոր կամ Գլուխ կապանի), սակաւ մի վերագոյն ունելով իջեվան մի ևս՝ հանդէպ Մահմուտ գեղջ որ յաջմէ գետոյն, մղոնաւ բացագոյն 'ի լեռնոտին. և 'ի մտից նորին միւս ևս գեօղ իբր կիսով փարսախաւ հեռագոյն 'ի նմին լեռնոտին՝ Գըզլաքձի? (Թերևս Գըզըլ-աղաճ) կոչեցեալ: — Ցեւս անձկագոյն վայրի կածանին ընդունի գետն յաջմէն վտակ մի՝ եկեալ յԱրմուտ-պէլի լեռնէ, առ որով յաջմէն (յարևմտից), Պէքչիձի? գիւղ. յարևելից՝ մղոնաւ 'ի բացեայ՝ Ջարտաճըգ գիւղ (Tschardatschak). և 'ի ստորև Կէյաղիմ? գիւղ: — Առ խառնրդովք վտակիս ուղին դառնայ յարևմտակողմն (յաջ) գետոյն, որ երկու կամ երեք մղոնօք վերագոյն ընդունի յահեկէն զօժանդակ իւր Խօճէմիչ՝ առ օթևանաւ միով, և սակաւ մի ևս վերագոյն յաջմէն այլ վտակ փոքրիկ, առ որով Ճէյալար գիւղ. և 'ի ստորև՝ մղոնաւ հեռի 'ի խառնրդոցն՝ Փուշլար կամ Պուրճ գիւղիկ [4], Թերևս Բուրգն, կամ աշտարակ մի 'ի վաղնջուց գոլով 'ի տեղւոջն. և խոնարհագոյն ևս Մահամէլլի գիւղ [5]:

Երկու մղոնաւ յարևելից հիւսիսոյ Պուրճի և յահեկէ գետոյն՝ կայ Պէքէքրյի մեծ աւան, 'ի 1270 Ջ. բարձու, Մէտէմ քաղաք կոչեցեալ 'ի Պելճիոյոզոյ տիկնոջէ, որ էանց ընդ այն յամի 1852, և ազատ առ ոստիկանի բռնաւորցն [6]: Մերձ յաւանն յաջմէ գետոյն և ճանապարհին են համանուն հալոցք կապարահատիցն Պէքէքրյի-մատէն կամ Էսկի Մատէն, 15 ժամուց ճանապարհաւ կամ 64 բնամղոն հեռի 'ի Պուլղար տաղ մետաղաց. յանուն սոցին և վտակ մի գետոյն Պէքէքրյի սու կոչի, այլ և Խօճիլի սու [7]. բայց քանզի կապարոյն հեռագոյն են քան բնամղոնաւ չափ 'ի ձորափորի Խօճէմիշայ, ուր ընդ հուպ հանդիպեսցուք: Ի սահմանաց աստի և անդր ընդ հիւսիս ցաղբերակունս գետոյն՝ որ յոյժ անձուկք են, յարևմտից մերձ ունելով զԳըրգ-պունար և յարևելից զայլ լերինս,

1 Ըստ Ֆիշէրի:
2 Ըստ Պերալի:
3 Տէվխ., 201: Բայց գիրք տեղւոյս Մէլէմէնճեայ՝ ըստ երկոցուն ճանապարհագրաց՝ ոչ համաձայնին իրերաց, զի մին 'ի հիւսիսակողմն կապանին կուկլակայ նշանակէ 'ի քարտէն, միւսն 'ի հարաւոյ. եթէ չիցեն երկու որէշ տեղիք:
4 Պերալ Pouchlar գրէ, Ֆիշէր Purtsch.
5 Ըստ Ռուս աշխարհացուցի:
6 ... Medem, ville bien connue dans l'empire turc pour ses mines de plomb. Je logeai chez le directeur des mines, qui en est en même temps l'entrepreneur, et qui m'accompagna dans ma visite à ses fourneaux. C'étaient des fourneaux primitifs s'il en fut jamais. Le minerai était jeté dans de grands trous au milieu d'un feu d'enfer, d'où le plomb liquéfié sortait par de petits canaux creusés dans la terre, et venait tomber et se refroidir dans une cavité pratiquée au dessous du fourneau. Il y a plusieurs mines çà et là dans la montagne, et la plus grande partie n'en est pas exploitée. En voyant la quantité de plomb que les fours vomissaient perpétuellement, le petit nombre d'hommes occupés à l'en tirer, et la simplicité extrême des moyens employés, je me dis que la spéculation devait être bonne pour l'entrepreneur, etc. — Belgiojoso, Asie Mineure.
7 Չիհաչէֆ, Ա, 298. բայց 'ի տեղագրոյց քարտէ սորա Կէօքլէ-սու գրի վերին մասն Գօրգունի, և ոչ նշանակի 'ի նմին առանձինն Պէքէքէթլի գետ կամ ջուր:

ոչ նշանակի չէն տեղի. այլ միայն իբրև վեց մղոնաւ 'ի հիւսիսոյ Պէրէքէթլեայ՝ աւերակքն Քէչի գալէսի (Այծից բերդ), փափաքելի 'ի քննութիւն։

47. Զորաւոր Լօճէմիշի. — Սուղ ինչ 'ի ստորև խառնրդոց փոքու վտակին՝ առ որով Ճէլալար և Պուրճ, խառնուրդք լինին վերյիշեալ Լօճէմիշի ընդ Գորգունի. և անդէն սկսանի անձուկ ուղին՝ զոր ստացաք ձգիլ գնալ ընդ Հս. Եւ. 'ի կողմն Կեսարիոյ, յարևմտից կամ յաջմէ գետոյն. առ որով նախ ջրաղաց մի հանդիպի, մղոնաւ բացագոյն 'ի գետակցութենէն. և նոյնչափ վերագոյն իջեվանն Պաձ-տէրպէնտ խան, որ միանգամայն յայտ առնէ զանձկութիւն կապանին և զբաժտուն հաստատեալ անդ. որոյ պաշտօնեայք կապալառուք՝ Հայք էին յանցանելն ընդ այն Քօչեայ՝ յերրորդում ուղևորութեանն՝ յամի 1859, որ և գիշերօթեաց առ վայրօքն (3-4 յունիսի), ընդ մէջ մաքսատանն և որմնապատ կամրջի միոյ, ուրանօր ժողովեալ էին վրանաբնակ անցորդք վասն հատուցման բաժին։ — Կիսաժամաւ անդր քան զկամուրջն՝ շարք են արդեւեան բլրոց, յորոց սեւահող լեռպակս ետես բուսաքնինն սպիտակածիլ Տերեփուկս (Centaurea eriphylla), Կորնգան լիւղացի, և Առուոյտ վայրի (Onobrychis)։ Աւելի քան զ 4200′ բարձր է տեղի կամրջի բաժտանն. բայց է միւս ևս կամուրջ երեք ժամուք 'ի ստորև՝ Պաձ մատէն խան Տէրվիշլի կոչեցեալ, 'ի բարձու 3850′ 'ի վերայ Լօճէմիշի, զոր Կիւմիւշլիւ սու կոչէ անդ՝ Քոչի։ Իբր հինգ մղոնաւ վերագոյն քան զբաժտունն՝ է միւս իջեվան Գայա-աչըք խան, որ տայ կարծիս քարաժայռ սարաւանդեալ 'ի վերայ իւր ունել. ընդ մէջ սորա և Պէրէքէթլիի՝ նշանակի աղբիւր մի, որպէս և 'ի հիւսիսոյ իջեվանին՝ 'ի վերայ ճանապարհին՝ այլ աղբիւր, և այլք ևս վերագոյն սուղ ինչ հեռի 'ի ճանապարհէն յահեկէ գետոյն. ուր սակաւուք ևս 'ի վերոյ քան զնոսին՝ է Պայան-տէրէսի գեօղ մեծ 'ի ձորակի միում. յորմէ երիւք մղոնաւ վերագոյն 'ի Մ. հիւսիսոյ առ գետեզերբն՝ Էյնէրլի գիւղ. և սակաւուք ևս վերագոյն՝ Պառէմ քէօյ։ Աստի և անդր ընդ Հս. Մ. սահմանք են Նիկոէ գաւառի նահանգին Գարամանայ, անջրպետեալ յ'իւլ գափու լերանց։ — Յելից հարաւոյ Պայան ձորակի անցանէ լեռնուղին որ 'ի Պէրէքէթլեայ տանի 'ի կապարահատն, ձգելով ընդ մէջ ձորոյն Լօճէմիշի և գօտւոյ Ալիչքար լերին, և է անձուկ մի ուղւոյն Պօղազ-մատէն կոչեցելոյ, 'ի 1400 Զ. բարձու, ուղիղ գծաւ իբրու չորս մղոն յելից յիշեալ գեղջն. անտուստ ճանապարհն ուղղի ընդ հիւսիս նոյնքան ևս մղոնաչափ, և հասանէ յարևմտեան հիւսիսային ստորոտս Ալիչքարի. անդ են Կապարահանքն Էսկի-մատէն 'ի 1970 Զ. բարձրատափի, 'ի կապուտակ կրային գետնի. ուր յերկու մղոնաչափ տարածութեան յայտնեալ են երակք կապարոյ, հորիզոնական խաւօք 'ի վերայ տափին, այլ 'ի կողմն առ 'ի չեղ դրիւք, ունելով մէն 0,20 մինչև 0,50 Զ. թանձրութեան. հինգ փորակք բացեալ են 'ի պեղումն. ուր՝ զի վասն բարձրութեան տեղւոյն հազիւ երիս կամ չորս ամիսս միայն մարթ է վաստակել, սակաւ է և շահն. այլ մարթ էր բանալ և զուբս 'ի կողաց, և առաստագոյն արտաբերել։ Մետաղն նման է հանից Պուլղար տաղի, նուազագոյն ևս ունելով արծաթ, այլ ճոխագոյն կապար. ամի ամի ընծայեն կապարահանքս 40 կամ 50,000 օխա (51-64,000 հազարգրամ)։

Ոչ կարի հեռի 'ի կապարահանից աստի, 'ի հարաւոյ նորին իբր ութ մղոնաւ ուղիղ գծով, յելից Ալիչքարի և յելից հիւսիսոյ Էմլիկ լերին՝ են այլ մետաղք Փօզ կամ փօզ-մատէն կոչեցեալ, ոչ քաջ քննեալք և գործեալք. այլ որչափ ինչ յայտ է՝ երկաթ է նիւթն, և պղինձ խակ, որ 'ի սակաւ ինչ փորձոյ՝ գտաւ 5%։ Ի փայտեայ կամրջէն ձգի այսր ճանապարհն, անցանելով ընդ մէջ ձորեզեր Գորգունի և Գարէնֆիլ և Մէսմէնէ լերանց, քերելով զարևելեայ ստորոտովք բարձանց Ալա տաղի։

Ի թողուլ մեր արդ զհովիտս արևմտեայ օժանդակաց Սարոսի, հարկ էր գիտել և զտեղի կցորդութեան նոցին ընդ միմեանս և ընդ բուն գետոյն. 'ի բազմաց անծանօթ մնացեալ բերան Գորգունի կամ խառնուրդն՝ հաւանելի է լինել ընդ Զագըրտայ, որպէս և արդ յետին քննիչք կողմանցն՝ Ֆավր և Մանտրոյ նշանակեն, բայց զանունն Քիւչիւկ սու գրեն. և այս յետ անցից ընդ մէջ Գզըլ տաղ և Գարէնֆիլ լերանց և մխելոյ 'ի դաշտակողմն, յանուանեալն Ին տէրէսի (Անձաւաձոր). ընդ որ ընթացեալ ոչ բազում ինչ միջոց՝ անկանի յարևմտեան մեծ առաջն Սարոսի, որ է Զամանդի։ Ի վերոյ քան զկցուածն ընդ Զագըրտայ՝ նշանակի 'ի ձախակողմեան եզեր զուգակցին՝ համանուն նորին գիւղ Գորգունն, որոյ հարկ է չափաւոր բարգաւաճ տեղի լինել, զի ընծայէ ջրոյն զիւր կոչումն. այլ ոչ գտանեմ յիշատակ առ ճանապարհագիրս. 'ի գրոց մերձաւոր անուն լսի Հարգան, իբրև թեմ եպիսկոպոսական յիշեալ 'ի սկիզբն ԺԳ դարու. թէպէտ և Զամչեան պատմահայր մեր համարի զայն լինել այժմեանս Հաճին, ոչ գիտեմ դարձեալ՝ ըստ ձայնին՝ զուշակեալ եթէ յայլմէ տուչութենէ։

48. Սահմանք Ալա-տաղ լերանց։ — Միջին պար Կիլիկեան լերանց ծանեաք 'ի բնագրութեանս զանուանեալն Ալա-տաղ (իբրև մեծ կամ գունագոյն ծաղկերանգ), և ըստ ոմանց Ալլահ-տաղ, որ 'ի Հր. Մ. ձգի ընդ Հս. Եւ. անընդհատ և իբրու միապաղաղ պարիսպ և անջրպետ՝ ընդ արևմտեան օժանդակս Սարոսի, ցքառասուն մղոն. իսկ ընդ լայնն՝ հասարակօրէն հինգ կամ վեց մղոնաւ չափ. այլ Հս. Եւ. կողմն լայնանիստ է կրկին քան զմէջն, մինչ Հր. Մտ. անձկագոյն ևս քան զհասարակն։ Բայց են և կողմնական թեւք լերանց, մանաւանդ յարևելից կուսէ, որք խափանեն 'ի մօտոյ կշռել զբարձրութիւն բնիկ պարուն, ('ի հեռուստ՝ 'ի ծածկել կողմնականացն՝ վեհագոյն յոյժ երևեալք), և դարաձև խոնարհին 'ի կողմն Զամանդեայ։ Ըստ ական կշռելոյ՝ ոմանք 'ի տեսողաց հաւասար առեն Պուլղար լերանց, և այլք սուղ ինչ նուազ, բայց զԱլիչքար սրակատար՝ որ 'ի Հս. Եւ. ծայրս պարուն՝ հաւասար համարին բարձրագոյն կատարաց համօրէն Տաւրոսի, 11,000′։ Արդ՝ այսու իսկ կարծեօք յայտ լինի՝ զի յոյժ անծանօթ մնան լերինքս և սահմանք նոցին՝ քան զհարաւային արևմտեան պարակիցսն, որ են բնիկ Կիլիկեան Գահք. և մնայ մեզ և որ զհետ մեր՝ սպասել յաջողակ քննողաց, և ակն ունել նման առաջնոցն և 'ի սոսին՝ գիւտս բնական բերոց, պէսպէս բուսոց և մետաղաց, և կարևոր ևս ծանօթութեան դրից հովտաց և ձո-

րոց, և որ 'ի նոյին ջուրյն հոսանաց երկուստեք։ Ծանօթ բուսախնդիրն Պուլղարեան լերանց (Քոչի, յամի 1859), ասէ միայն զարեւմտեայ լեպրակս Ալա լերանց ծածկեալս սրատերև մայրեօք, լարեկ-փիճեօք, և լիբանանեան մայրիւք. իսկ զարօտս նոցին ծանուցանեն հօրանք հովուաց Թուրքմանիկ տոհմից դեգերելոց զվայրեօքն։ Հասարակն լեռնագօտւոյն, յորում բազում ցըցուեալ խութք են, ոչ ուրեք գիջանի քան զ'7000' բարձրութեան. այլ «'ի չարս սուր և ժանեձև կերպարանացն՝ » բազում ուրեք միջամուխ լինին բրգաձև և գմբեթաձև » բարձրագոյն կատարք. գեղեցկագոյն է մանաւանդ հիւսիսայինն մասն, որ կանոնաւոր կերպարանօք վերամբառնայ 'ի չափ վսեմականն լերանց. ըստ բուսաբերութեան հարկ է լեռնագօտւոյս կարի այլազան լինել 'ի » Պուլղար լերանց[1] »։ Այսպէս գրէր բազում անգամ յիշեալ բուսաքննինն յամի 1853, և ցուէր զի սահմանեալ կարգ ուղևորութեանն ոչ ներէր նմա քննել «զամենայն նոր զայս սահման փլորայ» (ծաղկանց)։ Հարուստ նորութեամբք համարէր և զարևելեայ կողմն Գարսանտ օղլու վիճակի, որպէս և զարևմտեայն Պէրէքէթլի մատենի։ Յարևմտակողմն պարուն անձուկ և երկայնաձիգ ձորահովիտք են, և նկարագեղ լեռնաբլուրք փոքրիկ ձորակօք, որք անջրպետեն ընդ հովիտն Գօրգունի. ընդարձակագոյն է արևելակողմն, ցածուն լեռնական շարիւ զատուցեալ 'ի ձորահովտէն Ջամանդեայ. զորոց արևմտեան դիմօք քերելով վտակաց ջուրց՝ իջելոց յարևելեան կողից անտի բարձրաբերձ լերանց Ալա-տաղի, ընդ կողմն հարաւոյ հուն գործեն 'ի Ջամանդի գետ։ — Սակաւուց շինից լսին անուանք. միայն մերձ 'ի խառնուրդս հարաւագոյն վտակին՝ նշանակի 'ի քարտիսի ուրեք Աճմէտ գիւղ։ Առ այլով ևս վտակաւ՝ 'ի ձորամիջի ցրուեալ են գեօղք Աֆշարաց և ագարակաց նոցին, որոց յիշի իբր գըլխաւոր Գարսանտ օղլու 30 կամ 40 տամբք, յարևելեան ոտս մի լերանցն. չարք 'ի տոհմէ աստի Աֆշարաց կամ Թուրքմանաց՝ զինեալք էին և բռունք. գլխաւոր նոցա կալաւ զՉիհաչէֆ՝ յանցանել նորա ընդ սահմանսն (20 յուլ. 1853), այլ ակն ածեալ 'ի հրովարտակացն և յաղաչանաց՝ եթող. 'ի նմին ամի ուղևորելով և Լանկլուայ 'ի Կիլիկիա, 1300 վրանս գրէ Գարսանտլը տոհմիս, և աւելի քան զ'90,000 գլուխս օդեաց, այծեայց և արջառոց, և 350 ուղտուց։ — Ճամաւ վերագոյն 'ի հիւսիսոյ գեղջս՝ առ օժանդակաւ միով գետակին կայ յունաբնակ այգեւէտ գեօղն Կեավուր-քէօյ, առ երի դժուարակոխ ուղւոյ վասն փրթածոյ և վիժման քարանց յարևելից կուսէ. բնակութիւն Յունաց[2] յայտ առնէ մետաղաց լինել 'ի սահմանքս. զոր աներկբայ ևս առնէ չիկագոյն և երկաթախառն խառնաձոյլ գետինն՝ սակաւ ժամուք վերագոյն ընդ հիւսիսի, յայնկոյս Քիլէբրճի վտակի՝ հասեալ ցսակաւուք հեռի 'ի նախընթացէն, նման նմին անձուկ ձորակաւ։ — Ըստ հիւսիսոյ սորա միւս ևս ձորակ է Չալբուճի[3] կոչեցեալ, և ապառաժուտ և մայրեօք լեառն, ընդ որոյ մէջ և ընդ Ալա պարու՝ հոսի գետակն երագ երագ, ոչ աւելի քան զ'15 քայլ ունելով լայնութեան։ Աստի երկժամաւ վերագոյն է ձորակն Հաճիմաճ, որ հանգոյն առաջնոյն 'ի Հս. Մ. ձգի ընդ Հր. Ել., ունելով առ եզերն զհանգրուանս Հաճիմաճ-եայլայի, որ են հովոցք Գարսանտլը Աֆշարաց։ Դժուարագնացք են և կողմանք ձորակիս, լերինքն անտառացեալք ուղղաբերձ փիճեօք կամ լարեկօք, յորոց միջի ուրեք ուրեք և սօսիք երևին, բայց մայրք ոչ, և 'ի բարձրաւանդակս՝ բարձրաձաղկ գիհիք (Juniperus excelsa)։ — Աստի և 'ի վեր անձկանայ հովիտն որ ընդ մէջ Ալտտաղ պարու և սևակարմիր քարուտ անջրպետաց Ջամանդեայ. յորոյ յաջմէն սակաւուք հեռի և երկժամաւ 'ի Հս. Հաճիմանայ՝ կայ միւս ևս հանգրուան Աֆշարաց՝ և արօտք Պարզամա կոչեցեալ, յոր անուն և գեօղ վերագոյն ևս իբր երեք ժամուք, 'ի խաղս սոսուէտ վտակին։ — Աստի ժամաւ և կիսով վերագոյն՝ կամուրջ մի է քարաշէն 'ի վերայ վտակի, որ հիւսիսագոյն է 'ի ծանուցեալսն յայսմ կողման Ալա լերանց, ուր և աւարտ պարու սոցին 'ի բարձրակատարն Ապիշ, և յելից նոցին բացագոյն՝ լիճն Պինկիւլ-կէօլ[4]. յելից հիւսիսոյ՝ յոտս մի լերանց Տէլիք-դաշ (Ծակքար) անուանեալ հանգրուան, որ իբրև հինգ կամ վեց մղոնաւ ևեթ յարևելից կայ նախագրեալ Էսկի-մատէն կապարահանից, և է 'ի ձորակի իբր եօթն կամ ութ մղոնաւ երկայնութեամբ, 'ի միջի խրանման սրակատար բարձանց, առ որով են և մետաղահանք արծաթախառն, զոր Չիհաչէֆ համարի բարձր 2500 Զ. և աւելի։ Սուղ ինչ անդրագոյն ընդ հիւսիս՝ համարի սպառուած պարու Ալա լերանց, ընդ մէջ որոց և Անտիտաւրեան հաչակաւոր և մեծագոյն պարու՝ որ նովին դրիւք (Հր. Մ. ընդ Հս. Ել.) երկայնաձգի, կայ Քէրմէզ լեառն և այլք մերձաւորք՝ հորիզոնական իմն դրիւք, այս ինքն 'ի Մ. ընդ Ել., 'ի սահմանս Ֆառաշոյ և Հաճընայ, ուր ոչ միայն բնիկ լերանցն՝ այլ և ողջոյն իսկ աշխարհին Կիլիկիոյ անջրպետք են 'ի նահանգաց Կապպադովկիոյ և Մարաշոյ։

Բայց արդ քննեսցուք և զհայրենի դիւանս մեր, 'ի գիտ կամ յորոշումն գաւառի՝ որում վիճակեալ Թուիցին կողմանքս՝ որք 'ի Լամբրունէ և 'ի Կուկլակայ ցայս վայր։

## ՄՈԼԵՒՈՆ. — ԴԱՇՏ ՄԼՈՒՆԻ

49. Դաստակարդ բերդորէից ըստ պատմչին Կիլիկիոյ և այլ ինչ յիշատակք՝ ցուցանեն զկողմանքս որ ընդ մէջ նահանգաց Լամբրունի և Բարձրբերդոյ, (որ է 'ի Հս. Մտ. Սըսոյ), առ պայազատութեամբ մերայոցս կոչեցեալ Նահանգք Դղեկին Մոլեւոնի, կամ Դաշտ Մլունի.

1 In der Reihe der Kantigen und zackigen Formen tritt mehrmalls die Pyramiden und Kegelform in den mächtigsten Spitzen hervor. Besonders schön ist der nördliche Theil, welcher in regelmässigeren Formen sich zu einem imposanten Gebirge erhebt. Dieser Gebirgzug dürfte in seinen Vegetationsverhältnissen von jenen des Bulgar Dagh sich bedeutend unterscheiden, etc. — Kotschy, 124.

2 Բայց Մուրատ Բերիացի որ արարեալ է համառօտ վիճակագրութիւն մի Կիլիկիոյ յամի 1840 կամ կանխագոյն, 40 երդս Հայոց գրէ գեղջս. այլ այս Թուի յառաջ քան զեզինաստական մարտն, առ որով եկին Յոյնք 'ի գործ մետաղաց։

3 Չիհաչէֆ գրէ Tschaltgyngibi-dag.

4 Ըստ Քոչեայ. այլ հաւանօրէն Պին-կէօլ կոչելի։

յայտ է թէ յանուն մեծի և ամուր Մոլևոնի բերդի, որ թուի նման Լամբրունի և Պապեռոնի մնացեալ 'ի վաղուց 'ի Ցունաց ժամանակէ: Գիրքն գուշակին և յեկեղեցական վիճակագրութենէ. զի արքայեղբայրն Ցովհաննէս կոչի եպիսկոպոս «Նաճանգաց աստուածապահ Դղեկին Մալևեանի և մասին ինչ Բարձրբերդոյ». սահմանորդ ուրեմն էր սորին՝ յարևմտից կուսէ: Անունն, որպէս նշմարի 'ի յիշատակէդ՝ յոմանց սուղ տառիւ (ո) գրի և յոմանց ընդարձակ (օ կամ աւ), ես և Մաւլովոն, և համառօտեալ 'ի ռամկաց՝ Մուլուն և Մլուն. այսպէս գրեն և Արաբացիք Հըսն-էլ-Մլուն حصن الملون. իսկ 'ի Լատինաց՝ որք բազում անգամ զհայկական բառս ըստ ձայնին փոխէին և թարգմանէին յիւրեանց լեզու և յիմաստ, կոչի և սա Mons Livonis, և հոլովմամբ Montis Livonis. այլ և 'ի պարգևագրին Լևոնի Մեծի՝ առ ասպետս Հիւանդանոցին, յամի 1214, ռամկականաւն ձայնիւ գրի Երկիր Մլունի, in territorio Meloni. Ի սկզբան թագաւորութեան սորա՝ Աժառոս անուն էր իշխան բերդին և Նաճանգին, յանուանէն երևեալ ազգաւ Ցոյն գոլ, գուցէ և պայազատ հին զարմի, այլ մտեալ ընդ օրինօք թագաւորին Հայոց, որպէս և այլ ոչ սակաւ յոյն և լատին տեարք վիճակաց և բերդից: Ցետ նորա յիշի միայն Սիր Լեւոն տէր Մոլևոնի. որ 'ի սկզբան թագաւորութեան Բ Լևոնի համախոհութեամբ Ապլղարիպի այլոյ մեծի իշխանի՝ յապստամբութիւն մտաբերեալ, և ձերբակալ եղեալ՝ մատնեցաւ ընդ նմին 'ի ձեռս փէրվանէի զօրավարի Թաթարաց և կողմնապահի փռքուն Ասիոյ (1271) [1]: Հաւանօրէն յետ այնր զօրէն այլոց նշանաւոր ամրոցաց՝ յարքունիս գրաւեցաւ Մոլևոն, և առ Օշնիւ՝ 'ի սկզբան ԺԴ դարու՝ եղբայր նորին Ալինախ՝ ընդ Լամբրունի և Կուկլակոյ տիրէր և սմին: — Նմանապէս և յեպիսկոպոսաց կարգի երկու կամ երեք միայն ծանօթք են մեզ. նախայիշեալդ արքայեղբայրն Ցովհաննէս յամի 1260-90, Ներսէս յամի 1316 'ի ժողովի Ատանայ, և Մխիթար՝ որ յետոյ եղեն կաթողիկոս (1341): Թեմն թուի հաստատեալ 'ի շնորհս առաջնոյն՝ յարքայէ եղբօրէ իւրմէ և 'ի հօրէն, և մասամբ հին թեմին Բարձրբերդոյ ընդարձակեալ. այս Ցովհաննէս կոչի և արքեպիսկոպոս, ոչ գիտեմ թէ և յաջորդքն:

Երկեկի դիրք նկատելի են 'ի Մոլևոն, Դղեակն աստուածապահ 'ի Գահս Կիլիկիոյ, և Նաճանգքն 'ի դաշտակողմն. որ է ասել, թէ ոչ հեռի 'ի դաշտաբերանոյն կայր բերդն 'ի վերջին տեղագրեալ լեռնակողմանս և 'ի ձորահովիտս օժանդակաց Սարոսի. և պարզագոյն ևս ասել, 'ի լեռնահովտին Գորգունի, ուր թերևս և յիշեալ իջևանն և տունն Մէղէմէնճի կրէ ցարդ ընդ աղօտ ծեքմամբ զանուն Մոլևոնի. որոյ ոչ միայն դիրքն մերձ 'ի դաշտակողմն՝ 'ի ճահ գոն բանիս, այլ վկայեալ է և 'ի հաւանցի քննողէ կողմանցս, ըստ բանի տեղացեացն՝ եթէ երկու և կէս ժամաւ բացագոյն 'ի լերինս՝ են աւերակք՝ Էսկի-դաշ (Հին քար) անուանեալք, որոց ցանկալի է հետազօտութիւն: Հաւանելի է թէ և լեռնուղին ընդ մէջ Ալատաղ պարու և վերջին դարևանդից Պուլղարայ՝ ուր զիջևանսն յիշեցաք (յէջ 125), իցէ անուանեալն 'ի մերայոցս՝ փող Մոլեւոնի, որպէս նշանակի 'ի յաւելուածս ժամանակագրութեան Սամուէլի. եթէ, Եգիպտացիք յետ առման Աքայ քաղաքի, «գերեցին զՄոլևոնին փողն». զի հաւանօրէն ոչ կարացին առնանել բերդին. յորում յետ սակաւուց (1299) գործ ապիրատ գործեաց Սմբատ արքայ, զկնի խեղդամահ առնելոյ զմի յեղբարցն, աստանօր և զանդրանիկն զՀեթում՝ խաւարեցուցեալ յաչաց՝ արկ 'ի դիպահոջ, յորմէ զերծոյց միւս ևս եղբայրն՝ Կոստանդին, հալածեալ զՍմբատ: — Ի տկարանալ իշխանութեան Հայոց՝ յետ մահուան արքայից և արքայեղբարց, առ տղայ թագաւորաւն Լևոնիւ Դ, յամի 1323, յետ աւերման Այասայ՝ գրէ ոմն. «Ցիշաւ (ապստամբ) «արարեալ զօրացն Թուրքաց՝ զՄլունն զամէն առ հասարակ «'ի մեծէ մինչև ցփոքունս գերեաց, և հրով այրեաց «երկու պուրճ. և բազում քրիստոնեայք հրով կատարեցան»: Ցայսմ նուագի ևս թէպէտ և մասամբ աղարտեալ է բերդն, այլ թուի զերծեալ 'ի սպառասպուռ աւերմանէ, թերևս նոյնպէս և յետ երկոտասան ամաց, յորժամ Ալթուն-պուղա նայիպ Հալպայ, ըստ առաջնոյ օրինակին՝ յամի 1335 «յիշուեց յերկիրս 'ի ԻԶ մայիսի [2], 'ի «հինգշաբաթի յաւուր Համբարձման փրկչին, և երեկ զօրդ «'ի Մլունն, յԱտանայու ինչվի Տարսուս... ու գնացեալ 'ի «Մոլևոնին առջև, ու կեցաւ ինն օր յերկիրս ու ելաւ»: Այս վերջին յիշատակ է Մոլևոնի, որ և թուի նպատակ հարուածոյ թշնամեացն, ըստ կրկին յիշման անուանն 'ի գրչէ սատի. որում՝ ըստ այսմ դիտման՝ ներելի է յետ և առաջ դասաւորութիւն անուանց տեղեացն կոխելոց. զոր ոճով ևս նշանակէ յաւելիչ ժամանակագրութեանն Սամուէլի, եթէ զիարդ «ձիընթաց արձակեալ... 'ի մի գի«շեր և 'ի մի օր՝ հասեալք 'ի Մամուեստիա և յԱտանա, «և 'ի թագաւորաշէնն, և 'ի բոլոր դաշտս Մուլունին, զի «թերևս ըմբռնել կարասցեն զթագաւորն Լևոն», որ՝ զի խաղաղութեան ժամանակ էր՝ ըստ դաշանց, անկասկած և անպատրաստ կայր:

Ցոգնաբար՝ Նաճանգաց Մոլևոնի ասումն և բոլոր դաշտ նորին՝ յայտ առնեն զի ընդարձակ էր գաւառն, և թուի ինձ հիւսիսակողմն Ատանայ, միջագետք Ջագըտայ և Գորգունի, մերձ 'ի գետախառնուրդս նոցին և անդր քան զայն. յորում հարկ է թէ սփռեալ կային ոչ սակաւ շէնք. այլ հազիւ թէ երկուք կամ երեք յիշեալք 'ի գիրս. իսկ զարդիս՝ թերևս անծանօթագոյն ևս են սահմանքն, զէթ առ 'ի մէնջ:

Գլխաւոր 'ի յիշատակելոցն տեղեաց 'ի գիրս՝ է Վաներ բերդաւան, որոյ իշխան 'ի թագաւորութեան Լևոնի էր մարաջախտն Վասիլ, վախճանեալ յառաջ քան զամն 1214. յետոյ տեղին ընդարձակ սահմանօք՝ գրաւեալ էր յարքունիս. քանզի յայնմ ամի 'ի տալ Լևոնի զդուստր իւր Ռիթա (ըստ այլոց՝ Ստեփանի) 'ի կնութիւն Ցովհաննու Բրիենի՝ անուանեալ թագաւորին Երուսաղեմի, առ 'ի լրումն օժտի նորին՝ առեալ տասն հազար բիւ-

1 Ժամանակագիր մի ասէ. «Մոլովոնին տէրն Սիր Լէօն և Ա«պըլղարիպն մատեցին, և ըմբռնեցին 'ի փարվանայն»:

2 Ցօր. ԻԶ մայիսի գրեալ էր, բայց 'ի յիշեալ թուականին՝ որոյ տարեգիր է Գ՝ 'ի 25 մայիսի գայ տօն Համբարձմանն:

զանդ սաւակին ոսկի 'ի Հիւանդանոցին ասպետաց, ետ նոցա 'ի գրաւ զվաներ համօրէն սահմանօքն, գիւղովք և հանդրուանօք, արտովք և մայրեօք, ջրարբի և անջրդի վայրօք[1]. ընդ որս յիշին և ծովեզերեայ վայրք՝ կալուածք նորուն և նաւակայք. (Totam terram ... et maritimam, cum portu et introitibus et exitibus suis), բաց յերկուց ձկնատենից (exceptis duabus piscationibus), կոչեցելոց Կոռվիմ? Corvim, և Սաաբրաս? Saabras, զորս յայլում նուագի տուեալ էր նոցա։ Ստորագրեցին պայմանագրին զատ յայլոց՝ Կոստանդին Գունդստապլ, Վահրամ մարաջախտ, և եղբայր նորա Ճօսլին, Լեոն de Biulum, և ութ յասպետաց անտի, 'ի 23 ապրիլի. 'ի Տարսոն քաղաքի։

Միւս ևս աւան մեծ 'ի սմին վիճակի Մոլեոնի՝ պարգևեալ էր Լևոնի յառաջ քան զվաներ, յամի 1212, այլում կարգի ասպետաց, այն է Տևտոնաց կամ Ալամանաց, (Domus Hospitalis Teutonicorum), որոց և եղբայրակցեալ զինքն ասէ 'ի պարգևագրին, և յոյժ դրուատէ, զկոչեցեալն Գումբէթփոր? Cumbethfor, կամ Թերևս Գմբէթբերդ, զի ոչ գտանի անունս 'ի հայ գիրս. Cumbetefort գրէ կանոնիկոսն Վիլլեպրանտ, որ յայնմ կամ յառաջնումն ամի էանց ընդ այն՝ 'ի գալ իւրում 'ի Մըսսայ 'ի Տարսոն[2], և վկայէ լինել բարւոք կայան Տևտոնաց։ Լևոն ճշգրտէ և զսահմանս վիճակի աւանին՝ իւրաքանչիւր անուամբք[3], զորս՝ ցաւէ ինձ չկարել ստուգել 'ի հայումս, վասն յեղափոխութեանն և խեղութեանց 'ի լատին գրչութեան. բայց նշանակին սահմանքն այսպէս. յարևելից, ընդ արքունի պողոտայն ցսահմանաքարն՝ որ ընդ մէջ աւանին և Տետիմեկայ? (Tetimec), ուր ածուղ եդեալ էր ընդ քարին, որպէս և ընդ սահմանաքարիւ վանկուն (Vancun), ցոր վայր հասանէր սահմանն յայսմ կողմանէ. — յարևմտից, մինչև 'ի սահմանս Բելեգինոց? կամ Եղեգնոց գեղջ (Beleguinos կամ Belegiunos), ուր բնակէին շինականք յԱրենկ (Arenc կամ Arench), և էր կալուած վանաց Ս. Աստուածածնի Տուրրեայ (աշտարակի?), Sancte Marie de Turri. ուր նոյնպէս կայր սահմանաքար և 'ի ներքոյ ածուղ. և անտի ձգէր մինչև 'ի Սիւնն կճեայ. — 'ի հիւսիսոյ, ընդ կողմն Կեսարիոյ՝ մինչև 'ի Տուրոն (Թերևս բլուր մի), ուր նոյնպէս սահմանաքար և ածուղ 'ի ներքևն. — 'ի հարաւոյ՝ մինչև 'ի սահմանն Բաղանեաց? (Bagnigum), ուր խաչ կանգնեալ է, և մինչև ցժայռն կամ ակառն (rocha), առ որով նոյնպէս քարինք և ածուղ։ Դարձեալ և 'ի կողմն Կեսարիոյ և Աբրայինանց? (Աբրահամենց? Ապարանից?) են մէմք հաստատեալք՝ ածղով, և 'ի մէջ վիմացն խաչ քարեղէն։ — Գուցէ 'ի սմին նահանգի Մոլեւոնի էր և Այուն գիւղ (Ayun), զոր ընդ Գումբէթփորի, ընդ Ամուսոյ բերդի և այլոց ինչ աւանից՝ պարգևեաց Լևոն Ալամանացն, քանզի և այն սահմանակից ասի Վանկունի։ Զայս ամենայն ձրի առ սիրոյ և երախտեաց ասէ շնորհեալ նոցա, « ըստ օրինաց և սովորութեան փռանկաց ». և վաւերացուցանէ կարմրադեղով և ոսկի կնքովն. զորս անեղծ և անջինջ տեսեալ վկայէ Գուլիելմոս Բ պատրիարք Երուսաղեմի, յետ իբր 60 ամաց (1263-70), և ծայր 'ի ծայր ընդօրինակէ զպատճէնն։ — Տարադէպ Թուին կարծիք Լանկլուայ որ զԳմբէթփոր և զծովեզերեայն Մալլոյ քաղաք նոյն համարի։

Երկրորդ տեղի աւանդեալ մեզ 'ի գրոց՝ էր վանք կամ անապատ մի հուպ առ բերդին Մոլեոնի, ըստ հակիրճ անթուական յիշատակարանի գրոց նոր կտակարանի, գրեցելոյ

« Ի դղեակս Մոլեվոնի
» Ի յԱնապատս որ Կամբիկ կոչի.
» Ընդ հովանեաւ Աստուածածնին,
» Եւ Առաքելոցն Պետրոսի և Պօղոսի
» Եւ Աքանչելագործ Ս. Նշանին,
» Որ պահապան սա մեզ լիցի.
» Ի Թագաւորութեանըն Լևոնի։

» Արդ յիշեցէք զփակակալ սուրբ Ուխտին Կամբկանն
» զՅովհաննէս պատուական կուսակրօն քահանայ, որ
» ետ զսա փափագանօք գրել », և այլն։ Ոչ զայս և ոչ զվաներ և ոչ զայլս որ 'ի սահմանս նորին՝ ոչ գտի յիշատակեալ յայլ գիրս։ — Իսկ հռչակաւորն այն բերդ Մոլեւոնի՝ անազան ուրեմն ևս յերևան գայ յետ կոյս ԺԵ դարու, յՕսմանեան պատմութեան, որոյ գրիչք Մուլէն կամ Մոլվանէ անուանեն. չէն էր տեղին առ Բ Պայէզիտաւ 'ի մարտին ընդ Եգիպտացիս, և տեարքն՝ որ Թըւին Թուրքմանք, կամաւ հնազանդեցան ընդ ձեռամբ սոցա, այլ Եգիպտացիք վերստին նուաճեցին (յամի 1487). իսկ 'ի գալ միւսոյ ամին՝ Ալի փաշա պէկլէրպէկ Ռումէլիոյ՝ Թափեաց 'ի նոցանէ, հանդերձ Լամբրոնիւ և Կուկլակաւ. ընդ որս յիշին և Խօճա-գալէ բերդ՝ ընդ մէջ Ալատաղ և Իւչգափու լերանց, որ է 'ի սահմանս Պէրէքէթլի մետաղաց, և Այէնգաչ կամ Այնագաչ, որ Թուի ընդ մէջ Կուկլակոյ և Մոլեւոնի։

1 « Ego Leo, Dei gratia Rex Armeniæ, ... Dono et concedo Hele-
» mosinarie domino Fratri Garin de Monte Acuto, venerabili Magistro...
» quoddam casale nomine *Vanerium*, in territorio Meloni situm, cum
» casalibus, guastinis, terris cultis et incultis, aquis, nemoribus, pascuis
» et aliis omnibus sibi pertinentibus », etc. — *Cartulaire*.

2 .... Transeuntes Cumbetefort, ubi domus est et mansio bona Hospitalis Alemanorum, venimus Tursolt (Tarsus). — WILLEBRAND.

3 In territorio Meloni, aliud casale nomine Cumbethfor cum pertinenciis et divisionibus ipsius signatis. A parte orientis extenditur sicut vadit via usque ad petram inter Cumbethfor et Tetimec, et sunt infra petre pro metis fixe et subter carbones; de hinc extenditur usque ad metas petrarum fixas ex parte Vancun et carbones subter; a parte occidentis inter Cumbethfor et Casale dictum Belegiunos, quod habitant villani de Arench, et est Sancte Marie de Turri, sunt mete petrarum fixe et subter carbones; de hin extenditur usque ad columpnam marmoream. A parte septemtrionis, versus Casseriam sunt mete fixe et subter carbones, et vadit usque ad Turonum. A meridie, extenditur usque ad metas de Bagnigun, ubi *crux* est posita et usque ad *rocham* et infra sunt petre fixe et carbones supter. A parte *Abrainain*, et *Casserie* sunt petre fixe et carbones subter, et in medio petrarum fixarum est *crux* de petra. Item aliud casale nomine *Ayun* cum pertinenciis et divisionibus ipsius signatis. A parte *Calasie*, est crux de petra et carbones subter, supra viam que ducit ad Vancun. A parte orientis, extenditur ad *Pertusum vulpis*, et est ibi *crux* de petra, de hinc extenditur usque ad ovile et medio sunt mete de petra quinque et carbones subter. A parte Vangum, usque ad aliam *crucem* de petra que fixa est juxta gastinam supra viam et in capite vie est alia petra et via ibi dividitur. His ita assignatis, item dono et concedo a modo in perpetuum eisdem fratribus, etc. — *Cartul.* 119.

30. Ի սակաւ տեղիս յիշեալս 'ի գաւառին Մոլեւոնի արժան համարիմ յարել և զգաւառական վայր եպիսկոպոսի նորուն, զԳռներ, որ երբեմն Անապատ կոչի և երբեմն Սուրբ ուխտ, և նշանակաւ մեծութեան կամ բարգաւաճանաց՝ « հռչակելի սուրբ ուխտ Գռներոյ ». Թէպէտ և ասի լինել ոչ միայն հասարակօրէն «'ի գաւառս Կիլիկիոյ», այլ և «'ի Գահս Կիլիկիոյ, 'ի գաւառն Բերդին Բարձր ասացելոյ[1]», և « մերձ յաստուածապահ դղեակն Բերդ Բարձր կոչեցեալ[2] ». այլ զի սահմանակիցք էին գաւառքդ Մոլեւոնի և Բարձրբերդոյ, և յետնոյս մասն յաւելաւ յառաջինն՝ լինել Թեմ Յովհաննու արքայեղբօր, յայտ է թէ յայնմ մասին էր և Գռներ, որ եղև նիստ եպիսկոպոսին Մոլեւոնի. իսկ Բարձրբերդոյ եպիսկոպոսն կարծեմ նստէր յԱնդրիասանց ուխտն:

Անյայտ են արդ դիրք Գռներոյ, այլ մեծութեան նորին կամ համբաւոյ՝ վկայութիւն ընծայէ բան աշխարհագրին Վարդանայ, որ 'ի վանօրէից Կիլիկիոյ չորս միայն յիշէ իբրև գլխաւորս, զԴրազարկ, զԱրքակաղնի, «և զԳռներ բուն սուրբ ուխտն». չորրորդն Կեւեռնոյ անապատն, Թուի Սկևռայ գրելի կամ ընթեռնլի: Արքայեղբայրն՝ յորոյ շնորհս պատուեցաւ տեղիս այս՝ յինքնագիր աւետարանի՝ յամի 1263, տայ և նշանակս ինչ զօրութեանց նորին. « Ի սուրբ Անապատն Գռներ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ և աստուածակիր Նշանին Կայսերնի կոչեցեալ, և Սրբոյն Սիոնի մօր մեր »: Ամենայն հասեալ առ մեզ յիշատակք տեղւոյն՝ 'ի սմանէ (Յովհաննէ) են կամ զմանէ. յետ որոյ միայն յիշի 'ի Գաւազանագիրս ուրեք՝ Մխիթար կաթողիկոս, յառաջագոյն (քան զ'1341 ամն), լինել «'ի Գռներոյն՝ եպիսկոպոս»: Արդ զի բովանդակ յիշատակք Գռներոյ ժողովին 'ի մի յայս այր, այսինքն է յարքայեղբայրն Յովհաննէս եպիսկոպոս, որ և կանգնող և պայծառացուցիչ տեղւոյն երևի, և մի է 'ի կենդանագոյն դիմաց իւրոյ ժամանակին և ընտանեացն, արժան համարիմ գլխաւորել աստանօր որ ինչ ծանօթս է վասն սորա:

Արդ էր նա, որպէս բազում անգամ ինքնին գրէ, (զի և գտանին ցարդ ոչ սակաւ մատեանք գրեալք 'ի նմանէ և վասն նորին), « որդի քրիստոսասէր և բարեպաշտ իշխանաց իշխանին Կոստանդեայ Թագապահի և արքայահօր Հայոց, և եղբայր քրիստոսապսակ քաջ արքային Հեթմոյ », համահայր, որպէս գրէ այլուր, այլ ոչ համամայր. և ոչ է յայտ բնական մայր իւր իցէ կոչեցեալն ուրեք 'ի նմանէ մայրիկն Պիապր(իւէ), եթէ սանամայր. քանզի նախ 'ի կարգի անդ բանին մաղթէ թողութիւն հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց՝ որք ըստ հոգւոյ և մարմնոյ, « զի յոյժ ջանիւ աշխատեցան յիս, (ասէ). յաւէտ երջանիկ կրաւնաւորն Հռիփ., և մայրիկն իմ Պիապր »: Յայտ է և յարձանագրէ եկեղեցւոյն Պապեռոնի յամի 1241, զի ոչ յիշի ընդ չորեսին որդիս Կոստանդեայ. ապա հաւանելի է թէ կամ յետոյ ածեալ է սորա կին և ծնեալ զսա և զայլս, կամ թէ և յառաջ քան զայն թուական, այլ վասն անտիական հասակին ոչ յիշեցեալ անդ ընդ չափահաս և ընդ պաշտօնակիր եղբարսն: Ժամանակ ձեռնադրութեանն յեպիսկոպոս, և քերդուած մի նորին 'ի միջոց 1254-6 ամաց՝ պահանջեն բաւական երիցութիւն հասակի. այլ զի կանխէր հաւանութիւն այնպիսեաց ոմանց, որպէս Լամբրոնեցւոյն մեծի, Թողցի յապայն գիւտ ժամանակի ծննդեան նորին. շատ է մեզ գիտել ըստ իւրում վկայութեան՝ զի անդստին յերեխայ հասակէն կարգեցան նմա դաստիարակք զգօնք, և յոյժ ջանիւ աշխատեալ հրահանգեցին զնա՝ այնպիսի հայր հնարագէտ, և այնպիսի բազմաշնորհ եղբարք, որպէս Թագաւորն Հեթում, Գունդստաբլն Սմբատ, և արքեպիսկոպոսն Դրազարկու Բարսեղ. ըզյետնոյս՝ գրէ ուրեք (յամի 1263) ինքնին Յովհաննէս, մաղթելով յիշել « զաստուածապատիւ արքեպիսկոպոս արքայեղբայրն Հայոց՝ զտէր ոգւոյ և զերախտաւորն մարմնոյ իմոյ զԲասիլիոս, որոյ երախտիք գերազանց է քան զբան և զմիտս՝ 'ի կրսերս իւր ». ապա թուի ընդ ձեռամբ նորա դաստիարակեալ 'ի հաչակաւոր վանս Դրազարկու: Յաւազանէն կոչեցեալ էր Պաղտին, որպէս ծանուցանէ Պատմիչ տանն. յամի 1259, « Ի տօնի Գալստեան Հոգւոյն Սրբոյ, ասէ, եղև ժողով մեծ 'ի Տարսոն քաղաք. և յետ աւուրց ինչ ձեռնադրեցին զարքայեղբայրն զՊաղտինն՝ եպիսկոպոս, և անուանեցաւ Տէր Յոհաննէս ». ինքն իսկ գրէ 'ի յիշատակարանի ուրեմն (յամի 1286), « որ երբեմն Պաղտուցն կոչէի »:

Առաջին յիշատակ նորին և երկասիրութիւն, որ և ցոյց բարգաւաճ մտացն 'ի մանկական հասակին՝ է քերդուածն « Յարքայն Հեթում՝ մինչ 'ի Տարսոն էր, որոյ նախագիծ տանցն բառ անուանն է ոգեալ ». այսինքն տնազլուխ տառքն կազմեն զայս բան, « Երգս Հեթմոյ է արքային Հայոց. ա(ի) Յոհաննեսէ կրսերէ իւր ». և սկիզբն է,

« Երրորդութիւն սուրբ, Աստուած անսկիզբն եւ անեղ ».

'ի վեցերորդ տանն՝ յիշելով, զի

« Երբեմն անաստուած զօրով Հայկազեանք՝ տիրէին
Բազմակոյտ ազգաց և ազանց ».

Իսկ յորժամ Թագաւորն երկնաւոր ազատեաց զմեզ, ասէ, 'ի հոգևոր գերութենէ, պահելով

« Դարձեալ ըզմերն արքայութիւն...
Ոչ ձայն գոհութեան և ոչ մաղթանաց վերհընչեալ.
Այլ կացեալ անկռինչ անյարիր... (վասն որոյ)
Եղաք նախատինք զարմից համայնից
Եւ մատնեալք տերանց անբարեաց չարաց:
Այլ դու, Տէր անյիշաչար, ոչ արարեր անտես խապառ.
Պահեալ մի խանձող 'ի հրոյն, զոր սաղարթիւք պճներ
առոյգ.
Բամեալ 'ի դալար վայրոջ և հանգստեան ջրով սնուցեր,
Որոյ արքայ ընտրեցեր, զոր աջով քո պլսակեցեր.
Քարոզտալով մեզ ըզնա՝ վարուք բանիւք փոխանքո, Տէր,
Որոյ Հեթում մակագրէր, սիրոյդ սիրով յաւէտ վառէր:..
Նըման հովուիդ մեր քաջի՝ մատնեաց զանձն իւր ազգին
կարի.

1. 2 Նորին արքայեղբօրն Յովհաննու են և բանքս այսոքիկ 'ի յիշատակարանս ձեռագրաց՝ իւր կամ վասն իւր գրելոց:

Գուցէ բա՛ հնարաւոր լինի՝ որով փրկին այն հօտ փրկի.
Հոգի քո սուրբ և բարի՝ նըմա յաւէտ ընթացակցի,
Առնել զջանն իւր ըստ մտի, տալով պսակ գլխոյն մեծի.
Աւետարեր աղաւնի բերէր ըզնա նեղեալ անձանց », եւ:

Ապա փոխեալ զոճ բանիցն՝ մաղթէ Որդւոյ Աստուծոյ.

« Որդի Բարձրելոյ եւ հաստարմատ սիրոյ,
Ջուէր քո բազմացո առ անարժան հօտ քո.
Հողմով քոյ Հոգւոյ եւ Հօր բազկիդ աջոյ՝
Հովանի լիցիս մերն արքայի Հեթմոյ.
Անդ տալ շնորհս նմա որպէս Դանիելի,
Առնել զզարձ նորա ըստ Զօրաբաբելի...
Սրտացո ըզմեզ, ո՛վ սուրբ Երրորդութիւն.
Տեսլեամբ տենչալւոյն տուր զմեծ խաղաղութիւն», եւ:

Մաղթէ յետոյ և Սրբոյ Աստուածածնի, ասելով.

« Եթէ կամեսցիս՝ կարող ես, Սրբուհի.
Ընդ որ զուարճացի Աստուած մեր և քոյդ որդի.
Ի մաղթանըս մեր նայեաց՝ տաճա՛ր բանին կենաց.
Առեալդ զսյսըր փորձ՝ փրկեա ըզմոլեալքս 'ի փորձ.
Ի խուսող հաստատեալցս լեր 'ի մերըն գլուխ,
Նովաւ միացո զմեզ 'ի միայնըն մի ». և այլն:

Յառաւօտուց այսպիսւոյ հանճարոյ՝ արժան էր ակն ունել պայծառ տուընջեան. և թէպէտ չէ հասեալ 'ի ձեռս մեր կարևոր ինչ և մեծ երկասիրութիւն առ 'ի նմանէ, բայց և սակաւ ինչ մնացորդք երգոցն և յիշատակարանքն իսկ՝ նշոյլք են հաւաստեաց. և ոչ վայրապար համարիմ զաստացեալն նմա 'ի Մխիթարէ ումեմնէ՝ յինքնագիծ գիրս ինչ նորին. « Ո՛վ որբասնեալ և աստուածային խո» րոցն խորհրդածոյ, և անճառելեաց խնատիցն բացա» յայտող, և քննիչ խորոցն Աստուծոյ, և պատմող ըստ » 'ի վերուստ որոտացելոյ Բանին, յինքեանդ յամբա» րեալ վարագուրաւ մարմնոյդ, ասրբ տիեզերալոյս վար» դապետ և տէր, և ըստ հոգւոյ հայր մեր և առաջնորդ, » ընկալ զսակաւ գծիկս յանարժանէս Մխիթարէս և 'ի » կրսեր քո ծառայէս, և միշտ յիշեա զիս ». և այլն: Զկք թուական մատենիս և յիշատակարանիս, այլ ոչ կարծի Մխիթարն Գանեցի կաթողիկոսն՝ լինել, որ վաթսուն և վեց ամաք յետ Յովհաննու վախճանեալ է. բայց եթէ ասելով և զսա համանման նմին կանխահանճար մանուկ: — Թերևս առաւել մեծարանօք գրէր առ սա քաջածանօթ և մեծ բանաւէրն Գէորգ Լամբրունեցի, վերընծայելով զխմբագիր Մեկնութիւն գործոց Առաքելոց. « Ա» հա, ո՛վ աստուածասէր հայր իմ և տէր, հարկեցուցիչ » խնդիրս քո և պատկառելի շուք երեսացդ՝ դարձեալ » գրաւեաց զիս աշխու », և այլն. և մակագրելով 'ի գլուխ գրոցն, «Առ խնդրողն համառօտիս՝ տէր Յովհաննէս ար» քայեղբայր, և եպիսկոպոս նահանգաց աստուածա» պահ դղեկին Մաւլեւանի և մասին ինչ Բարձրբերդոյ, » և նոյն տեսուչ հաշակելի սուրբ ուխտին Գռներոյ »:

Ծանօթք մեզ յարտադրութեանց Յովհաննու՝ են Ցաղ 'ի Ս. Աստուածածինն, « որոյ նախագիծ տանցն ըստ ա» նուանն է ոգողին, մեծին Յովհաննիսի վարդապետի » ասացեալ, եղբօր թագաւորին Հայոց ». այսպէս մակագրի 'ի հին և յընտիր տաղարանի, և տնագլուխքն կազմեն զբանս, « Յոհաննու նավ ասացեալ նուագ Աս« տուածածինն կուսին Մարիամու ». և սկսանի,

« Յոր էն Հօրէն կատարեալ կանխաւ մինչ 'ի վախճան,
Սքանչելի տաճար իւր ծոցածնին և Էակցի »[1], և այլն:

Եւ համառօտ Մեղեդի մի ապաշխարութեան, որոյ տաղագլուխք կազմեն զբանս «Յոհաննես վայ քեզ». և սկսանի

« Յորժամ ածեմ ըզմտաւ զօրն ահագին՝
Ոսկերք որդւոյս կորստեան կործանի.
Հոգիս հոգալոյն հրով տոչորի, հալեալ մաշի ». եւ:

Զեն բաւական այսոքիկ առ մեծ համբաւ Յովհաննու գիտութեան և գրութեան, յոր սակս համարիմ զկոչումն նորա՝ Բաբունն, որպէս գրի 'ի յիշատակարանի Աստուածաշունչ գրոց յամի 1270. և ինքն իսկ գրէ. «Ես Յոհան» նէս եպիսկոպոս և րաբունն », 'ի գիրս Ս. Դիոնիսիոսի Արիսպագացւոյ, զոր յամին 1271 ընդօրինակէին Ստեփաննոս և Յովհաննէս, այլ և վասիլ ոմն և Սոսթենէս քահանայ: Նոյնպէս (րաբունն) կոչեալ է վաղագոյն եւս 'ի գեղեցկագիծ մատենկան գրոց Սողոմոնի և Յովբայ, զոր մասամբ 'ի ձեռն այլոց և մասամբ իւրով ձեռամբ գրեալ, (որպէս ցուցանէ լուսատիպս այս յիշատակարան), ընծայեաց Փիմեայ՝ տիկնոջ Սիգոնի, դատեր արքայեղբօր իւրոյ Հեթմոյ, 'ի սփոփանս և 'ի մխիթարութիւն.



Դարձեալ նոյնպիսիս գրէր և չափական բանիւ առ նոյն, որոյ տնագլուխք յօդեն « Յոհաննեսս ասեմ ». և այլուր

Իւսեալ տաճարըդ վըթար, որոյ հիմունքըն չափիւզոյ,
Անգինաքարինքըն յասպիս, և միջնայեռքըն վանեայք.
Սիւնքըն նորա եօթնեքին, խարիսխքն 'ի նմա արծաթիք,
Սընարք նոցա ոսկեղէն, քառակերպիցըն նման.
Ի վերնայարկըն սորա հիանըլշմար քերոբիմք,

[1] Ի բազում փափուկ բանից տաղիս՝ յաւելցին աստանօր և այս տողք, որք և կարծիս տան 'ի նուակատիս տաճարի միոյ Սրբուհւոյն նուագեալ.

« Ոսկիատիպ սիրամարգ, քաղցրաձայնիկ տատրակիկ,
Զայնիւ կոչող հաւ կաքաւ զմանկունսն՝ որ ոչ էր քո ծնեալ.

յիշատակ առնէ գգուանօք և զաւակաց նորին. «Զի-» մաստութեամբ լցեալն և զամենայն բարեձևութեամբ » զարդարեալն, զսիրողն Աստուծոյ և զսպասաւորն ա-» մենայն ծառայից նորա՝ զարքածին բամբիշն Ֆիմի, և » զաստուածապարգև զաւակսն նորին՝ զՊալիան և ըզ-» Ճուան և զհեզանազն Մակրուն (Մարգարիտ) յիշեցէք » 'ի Քրիստոս», և այլն[1]: — Են այլ ևս մատեանք ձե-ռին Յովհաննու խսկագիրք, կամ հրամանաւ և խնամօք նորին գրեալք[2], 'ի մեր իսկ 'ի ձեռս հասեալք կամ 'ի գիտութիւն, յորոց զուշակի քաջ ընթերցասէր և ժամա-նակի յարգող: Մի 'ի կանխագոյն գրչացն է Աւետարան մի[3], զորմէ ասէ յամի 1263, «Մեծագոյն ջանիւ և ջերմ » սիրով գրել ետու … ձեռամբ քահանայի Թորոս գրչի. » և նկարագրեցաւ սա յայլևայլ գրչաց … 'ի սուրբ ան-» ապատն Գռներ կոչեցեալ». և կրկին մաղթէ վասն եղբօր իւրոյ և արքայի Հեթմոյ. «Զի այս գլուխ, ասէ, » յետ աստուծոյն՝ հնարեցաւ և հնարի զփրկութիւն բազ-» մաց քրիստոնէից. ոչ զԿիլիկիոյ ևեթ ասեմ զաւառ » անմխաս պահել՝ 'ի լիզաջինջ առնողէն հինից Նետո-» ղացն, այլ գրեթէ և զամենայն քրիստոնեայսն՝ որ ու-» կըն դնեն կենսատու խրատու սորա». և այլն: — Կա-րևորագոյն ևս են բանք և ճահագոյն աշխարհագրական գիտմանս՝ յիշատակարան այլոյ աւետարանի ձեռնագրի իւրոյ, յամի 1280, զորոյ և զպատճառս յայտնէ վայե-լուչ սկզբնաւորութեամբ. «Անմահին մահու մահակից և » փառաց նորա թագակից՝ հարք մեր և եղբարք 'ի Քրիս-» տոս՝ ժառանգողք սորա և տեսողք և գաղափարողք … » ձեռամբ իմով գրեցի զսա … յամին ԶԻԹ թուականիս » Հայոց, ես Յովհ. եպիսկոպոս Նուաստ ծառայ Աստու-» ծոյ իմոյ Յիսուսի Քրիստոսի և կրսեր ձեր ծառայակից»: Եւ յետ այլ բանից. «Օրհնեալ հօգի հօրն իմոյ Կոստան-» դեայ: Եղէ այցելու սուրբ Անապատին Գռներ կոչե-» ցեալ 'ի Գահս Կիւլիկիոյ, 'ի գաւառն Բերդին Բարձր » ասացելոյ. յորժամ տիրէր հայրն իմ դղեկին, և կըր-» ներս՝ Անապատին. յորում տաւաղեալ բնակէի իբր » անխռով և անքոյթ նաւահանգստի, բերկրեալ միշտ » աստուածաշուք տեսլեամբ մեծ նահապետին հօրն մեր, » և կրթեալ սուրբ տառիւք. տեսի զնորին շինեալ գիւ-» ղաքաղաքն յանուն իւր՝ Կոստանդնոց կոչեցեալ, լի 'ի » Քրիստոս հաւատացելովք բազմօք, առաքինի երէ-» ցամբք և սարկաւագօք. ընդ որս խրախացեալ՝ յան-» ձին կալայ խմոխ իսկ մեղսամակարդ ձեռամբքս գրել » նոցին զսուրբ աւետարանս. յոր և յանկ ելեալ Տէրամբ » 'ի մէջ ամբոխից և պաշտամանց … գրեցի զսա. լաւ և » ընտիր կազմեալ, որպէս տեսանի. և ետու զայն 'ի » գեօղն Կոստընդնոց, որ էին նախ Կարմիր-գտակնի » կոչեցեալ … Բայց գրեցաւ 'ի յոյժ տրտմութեան ժամ. » զի այս երիցս … հրձիկ զամենայն Կիւլիկիա արարին … » և քրիստոսասէր տէր իմ և եղբօրորդի արքայն Լևոն՝ » իբր զգթած հայր ժողովէ և մխիթարէ զմնացեալսն, և » ևս բարիոք պատուաստէ», և այլն: Յիշեալդ Կարմիր-գտակնի իցէ անշուշտ Գզըլ-պաշ կոչեցեալ տոհմն Պար-սիկ, յոր անուն ցարդ ճանաչի ուրեք ուրեք 'ի փոքր և 'ի Մեծ Հայս, և ոչ է 'ի բուն կամ 'ի հասարակ ազգէն Պարսից, այլ աղանդաւորք, օտարք և 'ի Թուրքաց: — Երկամաւ յառաջ (1278) գրեալ էր Յովհաննու, և ըստ մասին՝ ձեռամբ այլոց՝ միւս այլ աւետարան[4] «'ի վայե-» լումն աստուածասէր իշխանին՝ Պարոն Սմբատայ, որ-» դոյ հանգուցեալ և բարեպաշտ իշխանին Պարոն Կոս-» տանդեայ՝ և հանգուցեալ մօրն իւրոյ Շահանդխտին, և » հանգուցեալ եղբարցն՝ Պարոն Բակուրան և Պարոն » Կոստանդ[5]: Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ » սուրբ և քննրեալ աստուածահաճոյ արքեպիսկոպոսին » սուրբ Ուխտին Գռներոյն՝ Տէր Յոհաննիսի». Ծաղ-կող աւետարանին Վասիլ ոմն է: Բազում ուրեք 'ի լուս-անցս մատենիս նշանակէ Յովհաննէս զտարբեր ընթեր-ցուածսն՝ ծանուցանելով, զի «Զոր գտանես 'ի լուսան-» ցըն՝ ազդ է, և ոչ է պակաս, բայց յերկու տեղի». և երկիցս և թերևս աւելի անգամ գրէ, «զի 'յոյժ տագ-» նապիմ յուղղոյն գիտ». կամ, «յոյժ տաժանեցայ » յուղղոյն գիտ». այսինքն յընտրութիւն լաւագունին յայլևայլութեան բանից ինչ յօրինակս սուրբ գրոցն. այս-պէս արարեալ է և Ս. Լամբրոնեցին, և վստահօրէն ընտրեալ, և զպակասորդ ինչ բառս կամ բանս՝ որ յայլ թարգմանութիւնս գտանին՝ մուծեալ յիւրն: — Վերջին ծանօթ ինձ մատեան ընդօրինակեալ խնամօք Յովհան-

Եւ ստորակայն՝ ախճակապք, յաւեալք 'ի նա և կըճեալք:
Նոր Սողոմոն արքային գաշաւորակն 'ի սմին,
Յորոյ վերայ զենանի մարմին եւ արիւն Անմահին.
Մահացելոցս կենարարն, մեղուցելոցս քաւարան,
Եւ տարագրելոցս հաշտարան և 'ի գըլուխս յօդարան:
Աւլ դու գշխոյ պաշտելի, ընաւից կուսից խսկուհի,
Ընկալ ըզբանս աղերսի և կարկառեա օրհնելի…:
Արեւելեանն այն մօգուց աստղահրաւէրն եկելոց՝
Հաւատ և յոյս մեր և սէր՝ գեր նոցայոյն քեզ նըւէր.
Մըրոյն նըման երկնանման՝ յորում եգաւ Աստուած Բանն՝
Լիցին և սիրոյս մեր արժան՝ լինել նըմին օթարան». և այլն:

1 Հանգոյն հօրեղբօրն և եղբայր Ֆիմեայ՝ թագաժառանգն Լևոն (Բ)՝ ընծայէր քեռն սիրելւոյ աւետարան մի չքնաղ, գրեալ հրամանաւ կոստանդնի կաթողիկոսի յամի 1249. յորում ճոխագոյն ևս ծանուցանի, զի յամի իբր 1263, «Բարեփառ կայսերածին ծիրա-» նածնունդ աստուածապաշտ քաղաքին Սախոյ Տամ Ֆիմի, դուստր » բարեպաշտ թագաւորին Հեթմոյ, յաղագս սատանայական պատե-» րազմացն՝ եկն յաշխարհս Կիլիկեցւոց, առ հայրն իւր և առ աս-» տուածասէր եղբարքն, Պր. Լևոն և Պր. Թորոս, ուստերովք և » դստերովք … Եւ զի տրտմեալ էր Տամ Ֆիմէ՝ վասն վշտացն որ » ժամանեցին նմա, աստուածասէր եղբայր նորին Պր. Լևոն ետ » զաստուածախօս աւետարանս նմա՝ 'ի մխիթարութիւն», և այլն: Պատճառք վշտաց տիկնոջն են նուազել տէրութեանն Սիդոնի, է ինչ որ թշնամեաց բռնութեամբ, և է որ իւր իսկ առնն (Յուլիանու) վաճառելով օտարաց, ընդ որ ծանրացաւումն եղև հայրագիր նորա Հեթումարքայ: — Երջանիկ պայազատք՝ որոց կարողագոյն սփոփանք սրտի՝ էին մատեանք հոգեխօսիկք, այլ և գեղեցկազարդք, նկարէնք, և սրբազանից ձեռօք կամ հրամանօք գրեալք:

2 Յէջմիածնի յիշէն (Թիւ 219) Աստուածաշունչ մատեան գրեալ 'ի Յովհաննէ, յամի 1288. միւս ևս (Թիւ 149) գրեալ վասն նորա յամի 1270. և Աւետարան գրեալ 'ի նմանէ յամի 1287 (Թիւ 227):

3 Ի տան ազնուատոհմ Ապրոյեանց 'ի Զմիւռնիա պահեալ էր երբեմն, ոչ գիտեմ թէ և արդ, այս մատեան:

4 Այս աւետարան պահի արդ յարքունի գրատան Մոնագոյ մայ-րաքաղաքի Պաւարիոյ:

5 Յաւագ իշխանաց և 'ի սոյն իսկ զարմէ թագաւորահօրն էին սո-քա, որպէս վկայէ Պատմիչն թագաւորական, թէպէտ և յայն ասիցէ զՍմբատ, որպէս կոչէ և զայլս ոմանս 'ի Հայոց, վասն ծխոյ ինչ կրօ-նիցն: Տակաւին «տղայ գոլով հասակաւ», յամի 1263, ըստ Պատ-մըչին մերոյ, առաքինացաւ սա 'ի մարտին Մանիօնի ընդդէմ Խարա-մանին, և գովեցաւ և պարգևելով յարքայէն և յարքայհօրէն՝ առա-քեցաւ առ մայրն և առ եղբարս իւր:

նու 'ի ձեռն երից գրչաց և յևրմէն իսկ յիշատակագրեալ յամի 1286, է Մեկնութիւն Աւետարանաց Ղուկասու և Յովհաննու, Յայտնութեան գրոց և Հանգստեան Յովհ․ Աւետարանչի (արարեալն 'ի Ներսիսէ Լամբրոնեցւոյ)[1]․ յորում ստորագրէ զինքն արքեպիսկոպոս, զի այլուր ե֊պիսկոպոս գրէ․ աստանօր և վասն հօր իւրոյ « քրիստո֊ » սեալ և ամենարջանիկ իշխանաց իշխանին և արքա֊ » յական ծերունւոյն՝ արքայահօր և Պարոնին Հայոց » Կոստանդեայ », ասէ՝ Մոզոն կոչեցեալ[2], զոր այլուստ անգիտանեմք։ Թուի թէ մի յերիցն գրչաց իցէ Վար֊ դան Բարձրբերդցի, զի է յիշատակ մի նորին 'ի մատենին, յորում ուսուցիչ իւր կոչէ զայն ինքն զՅովհաննէս։ Յետ երից ամաց գրչութեան մատենիս, այսինքն յամի 1289 եղեալ է վախճան արքայեղբօրս Յովհաննու Բարունւոյ, ըստ համառօտ նշանակի ժամանակագրութեան միոյ․ « ՉԼԸ․ 'ի նոյնս, մեռաւ Տէր Յովհաննէս »[3], յետ ա֊ մենայն եղբարց իւրոց համահարց, զի համամարքն չեն քաջ ծանօթք։ Ոչ յիշի տեղի թաղմանն, թէ իցէ Գռա֊ ներ կամ այլ վայր։ — Իսկ զաթոռս Գռներոյ յետ նորա կալան, որպէս վերագոյնդ յիշեցաք, Ներսէս յամի 1316 և Մխիթար 'ի 1341։ — Ի սկիզբն ԺԴ դարու, յամի 1303, յիշի 'ի Գռներ Մարտիրոս վարդապետ աշակերտ Գէոր֊ գայ Սկեւռացւոյ, ընդօրինակելով Աստուածաշունչ մա֊ տեան մի, որ արդ պահի յԷջմիածին։

Արժանաւոր է յիշատակի և վարկի յետինն յիշեալ եպիսկոպոս՝ Մխիթար․ զոր, քանզի չէր ծանօթ տեղի վանացն, նոր պատմահայր մեր Չամչեան՝ կարծեաց լի֊ նել 'ի Քռնայ Երնջակայ․ ժամանակակից կաթողիկոսին և հակառակողն Ներսէս Պալիենց՝ Հռոմէցի մականուանէ զնա, չգիտեմ զո՛ր գաւառ յունական կողմանց իմանա֊ լով, և 'ի ռամիկ սովորութենէ՝ Տէր Միսիկ կոչեցեալ։ Խառնակայ ժամանակի հանդիպեցաւ այրն զգօն, յորում անդուլ մարտք Եգիպտացւոց արտաքուստ, խնդիր յա֊ ջորդութեան թագաւորաց մերոց 'ի ներքուստ, և կիսա֊ հայոց (Լուզինեանց) ունել զգահն, և ներքսագոյն ևս վէճք կրօնից և ծիսից՝ 'ի տագնապի կացուցանէին զեր֊ կոսին ևս աթոռս ազգին, և զվիճակեալսն ընդ նոքօք․ վասն որոյ հարկ համարեցան խլուցանել զՅակոբ 'ի կա֊ թողիկոսականէն, և ամբառնալ 'ի նոյն (1341-2) զե֊ պիսկոպոսս այս Գռներոյ․ որ և անդէն 'ի սկզբան գահա֊ կալութեանն՝ ստիպեցաւ արքունուստ և 'ի յորդորմանէ Քահանայապետին Հռովմայ՝ ժողով գումարել 'ի Սիս, իբր երեսնից եպիսկոպոսաց և քսան վարդապետաց և վանահարց, և առնել երկար պատասխանի՝ խոհական և հանդարտ ոգւով, բազմապատիկ այլանդակ մեղադրա֊ նացն՝ որ սադրանօք Պաղոնն Ներսիսի համարի չարա֊ դրեալ 'ի 117 յօդուածս անյարիրս, յորոց շատք զզուանս իսկ ածեն ընթերցանելեաց։ Ստիպեցաւ Մխիթար դար֊ ձեալ երկիցս և երիցս առնել պատասխանի 'ի բացա֊ տրութիւն իւրոց և ժողովականացն բանից, և 'ի հեր֊ քումն զրպարտութեանց և մոլորութեան կարծեաց, ան֊ աչառ ընտրութեամբ ցորենոյն և որոմանց և որոմնա֊ ցանից, անայլայլակ և արդարակորով երկայնմտու֊ թեամբ, որ չատ էր 'ի դասել զնա ընդ առաքինիս և վսեմականս․ և թուի թէ մինչև ընկալեալ զարժանա֊ ւորն վկայութիւն և զլուծումն խնդրոցն, փոխեցաւ յաւ֊ տեացս, յամի 1355․ վերջին գտեալ 'ի վեհական կաթո֊ ղիկոսունս մեր, և գրեաթէ վերջին կարևոր թղթակից ընդ վեհագոյն աթոռոյն Հռովմայ։ Թերևս ստուգագոյնս յայտնեսցէ ժամանակ զայս և զայլ գործս Մխիթարայ։

Իսկ մեք մինչև մեկնեալ 'ի սահմանացս Գռներոյ՝ ազդ արասցուք ապագայից տեղաքննաց, զ'ի վեր անդր նշանակեալն (յէջ 144) Ս․ Նշան Կայտէնի․ որ՝ հովա֊ նեաւն յայտ առնէ ոչ խաչ մի միայն՝ այլ և եկեղեցի, և եկեղեցեաւն՝ զչէն ինչ որիչ 'ի Գռներոյ․ և ահա 70 ա֊ մաւ յառաջ (1193) ծանուցանէ մեզ գրիչ հնագոյն աւե֊ տարանի զամուր դղեակն Կատենոյ, և մերձ նմին զԱն֊ ապատն Պաւղոսական, ուր և գրէր զսուրբ մատեանն։ Ապա մերձակիցք են իրերաց երեքին տեղիքս, Գռներ, Կայտէն կամ Կատեն, և Անապատն Պօղոսական, և փափագելիք 'ի հետազօտութիւն։

## ԲԱՐՁՐԲԵՐԴ

51․ Սահմանորդ վիճակին Մոլևոնի՝ որպէս ցուցաւ, և « 'ի Գահս Կիլիկիոյ՝ գաւառն Բերդին Բարձր ասացե֊ » լոյ », ըստ 'ի վեր անդր գրեալ բանից՝ Յովհաննու ար֊ քայեղբօր, և ըստ Վարդանայ աշխարհագրի, որ ասէ « զԲարձրբերդն մօտ 'ի Մոլևոն », հարկ իսկ էր և առ նմին նկատել զտեղիս զայս։ Զառաջինն հռչակեալ վասն ամրոցի միոյ՝ ըստ դրիցն մականուանելոյ Բարձր, ապա 'ի տարածանել և հաստատել տէրութեանն Հայոց՝ ընդ֊ արձակեալ սահմանօք՝ համարեցաւ ընդ գաւառս․ բայց յաճախ երկոցուն ևս զուգախառնին յիշատակք, այսինքն բերդին՝ և որ շուրջ զնովաւ նուաճելոց կամ սեփակա֊ նելոց տեղեաց․ այսպէս իմանալի է և զբան Թարգման֊ չի Պատմութեան Միխայելի Ասորւոյ, յասելն զԴղեկէ « Բարձրբերդոյ, որ հայի հարաւով ընդ դաշտն Կիլիկիոյ » և 'ի ծովն Անդրիանու », (փոխանակ ասելոյ Միջեր֊ կրականի)․ որով գուշակի արդարև ըստ անուանն՝ մեծ բարձրութիւն և ամրութիւն բերդին, և հանդերձ այսո֊ քիւք և հնութեամբն իսկ՝ ընդ նախակարգեան բերդո֊ րայս աշխարհիս դասել․ նա և նախապատիւ՝ այնու, զի

[1] Ի թվին Հայոց ՉԼԵ գրել եառ զսուրբ տառս երից գրչաց, ո֊ » րոց Տէր Աստուած ողորմեսցի․ ամէն։ Որոց յոյժ բազմայի լուսավեր » մնաց սոցա և անտայթաք իմաստից, յար ընդ իս կալցս սակս․ զորս » և 'ի մի տեղ հաւաքեալ, զՂուկասուն՝ յիգնատիոսէ, և զՅովհան֊ » նուն 'ի Նանան սարկաւագէ, զՅայտնութեանն 'ի Թեոդորոսէ ե֊ » պիսկոպոսէ, զէր ընդ եղբարսն 'ի Ներսէս եպիսկոպոսէ Տարսոնի․ » զի առձեռն պատրաստ ընաւին գոցի բանասիրաց և աշխատասէր » ծիր մշակացդ աստուածատունկին այգւոյ… Աղաչեմ խնամ և » գուԹ և ձեծարանս առնել սմա՝ իբր Աստուծոյ պաղատամունքի և » հոգւոց ծնօղի․ մի մրճոտել, մի պատառել, մի մերկ ընկենուլ », և այլ նման սոցին աղերսք։

[2] Այլ նոր գրիչ Մողոն ընԹերցեալ է զանունս։

[3] Նոյնց ինչ այլս մակադրական անուան առ Տէր Յովհան֊ նէս կոչումն, և այլ ինչ քաղաքական յիշատակք ժամանակագրին՝ յոյժ հաւանօրէն զԱրքայեղբայրս ցուցանեն․ թէ և սուղ ինչ երկ֊ բայս ածցէ Մովսէս վարդապետ մեկնիչ ժամագրոց, որ յամի 1293 ասէ մեռեալ զխնդրող գրոց մեկնութեանն՝ Յովհաննէս Բաբառոնայ֊, որ՝ ոչ գիտեմ սա՞ իցէ թէ այլ ոք։

(եթէ առոյգ իցէ աւանդեալն 'ի Կիրակոսէ՝ վասն Նախա֊
պետի տերանց Կիլիկիոյ, Ռուբինի), յետ մահուան Գագ֊
կայ՝ « գնաց 'ի սահմանս Կիլիկիոյ արամբ միով՝ որսալ
» կաքաւս. և էր անդ բերդ մի զօր Բարձրբերդ կոչէին. և
» էր անդ եպիսկոպոս մի Հոռոմ. և եղև ծանօթութիւն
» առնն և եպիսկոպոսին… և եղև օր մի զի ամենայն
» պաշտօնեայք եպիսկոպոսին ելեալ էին արտաքս 'ի բեր֊
» դէն, 'ի պէտս ինչ գործոյ իւրեանց. և էր եպիսկոպոսն
» միայն և պատանի մի ընդ նմա. եկն այրն որսորդ հուպ
» առ բերդն որսալ կաքաւս. և տեսեալ զնա եպիսկոպո֊
» սին՝ ձայնեաց գալ առ նա և 'ի միասին ճաշակել. և
» նա ոչ հաւանէր. և էջ առ նա եպիսկոպոսն առանց
» պաշտօնէի. իբրև … մտին 'ի ճաշել, և 'ի պակասել գի֊
» նւոյն », առաքեաց եպիսկոպոսն զընկեր որսորդին 'ի
բերդն. նա մի միայն սպասաւոր գտեալ անդ, « ելեալ
» 'ի պարիսպն նշանակեաց տեառն իւրում, եթէ Առ
» զբերդս. և սա ասաէն 'ի ներքոյ խեղդեաց զեպիսկո֊
» պոսն. և ինքն մտեալ 'ի բերդ անդր՝ բռնացաւ, և առ
» սակաւ սակաւ աճեցոյց զկալուածս իւր », և այլն։ Թէ֊
պէտ և զրոյցք թուիցին քան պատմական ստուգութիւն
բանքդ, այլ հաւանելի է, զի թէ ոչ Ռուբէն՝ այլ այլ ոք
ժամանակակից իշխան Հայ նուաճեաց զԲարձրբերդ.
քանզի, որպէս բազում անգամ ազդեցաք, հաւաստա֊
գոյն պատմիչք ասեն վասն Ռուբենի՝ 'ի կողմանս լե֊
րանց Փախցիոյ տիրեալ նախ Կոպիտառայ բերդի և Կոռ֊
մոզոլի, որոց դիրք թէ և անստոյգք՝ այլ յանուանէ Փախ֊
ցիոյ գուշակին հեռագոյն լինել 'ի Գահուցս Կիլիկիոյ.
իսկ Բարձրբերդ է ընդ մէջ դեռ տեղագրեալ Մոլևոնի
յարևելից, և Սսոյ՝ 'ի հիւսիսոյ արևմտից, և որպէս թուի
'ի հովտի արևմտեան զուգակցին Սարոսի, այն է Զա֊
մանդեայ. զի և զհռչակեալս Բարձրբերդ, որ և առ պատ֊
միչս այլազգեաց ծանօթ էր և կոչիւր Պէրպիւրոն, մարթ
է անծանօթ ասել այժմ. իբրու զի ոչ 'ի քարտէս նշանակի
և ոչ գիտնականի մերազգւոյ կամ օտարի՝ հանդիպեալ
է նմին և տուեալ ծանօթս. վասն որոյ թողեալ ապա֊
գայից ստուգել զայսոսիկ, նշանակեսցուք զառ 'ի նախ֊
նեաց պատմական յիշատակս։ -- Զոր օրինակ կեղա֊
կարծ ցուցաք զնուաճումն տեղւոյս 'ի Ռուբինէ Ա,
նոյնպէս է՝ մանաւանդ թէ և ոչ ճշմարիտ՝ բնակու֊
թիւն նորին և առաջնոց պայազատացն յայսմ բերդի լի֊
նել, որպէս թուեցաւ ոմանց. այլ հաւանագոյն է ասել
զսա տեղի պահպանութեան գանձուց նոցին, որպէս հա֊
ւաստէ Աբուլֆարաճ Ասորի պատմիչ՝ ծանօթ և հիւր
արքունեաց մերոց. և ստուգիւ յետոյ բազում անգամ ե֊
ղև Բարձրբերդ ապաստանարան նոցին. և նախ Թորո֊
սի Բ՝ 'ի գալ 'ի վերայ նորա Մանուէլի կայսեր (1157-8),
որ ասի իսկ « Պաշարեալ զնա 'ի դղեակն Բարձրբերդ
» կոչեցեալ. յարձակեալ ապա քաջն Թորոս 'ի վերայ
» ժողովյն Յունաց, զբազումս եսպան և զյոլով սեաւա֊
» տիոսս գերի տարեալ 'ի դղեակն՝ վաճառեաց ընդ ոս֊
» կւոյ՝ կայսերն Էմմանուէլի, և զգանձն բաշխեաց իւրոց
» հեծելակաց զօրուն »։ Զայս բան 'ի չափական փոխեալ
Վահրամայ, ասէ.

« Թորոսի 'ի Դղեակն ելեալ
Որ Բարձըր բերդն էր ասացեալ,
Եւ ըզլեռանն ըզինքն առեալ,
Հեծելական զօրօք լըցեալ.
Յոր՝ իբրև զօրք Յունացն եկեալ,
Վաղվաղակի եղեն պարտեալ.
Յորոց յոլովք ձերբակալեալ
Եւ առ Թորոսն ածան կապեալ ». և այլն։

Բայց թուին աստանօր պատմիչքդ շփոթել զերկոսին
գործս Թորոսի, և զերկիցս պաշարիլ նորա 'ի Յունաց՝ 'ի
Մսիս և 'ի Բարձրբերդ. յառաջնումն դիպուածի՝ որ յա֊
մի 1151-2, ընդ յունակողմն իշխանաց Հայոց, Լամբրո֊
նեանց և Նաթանայէլեանց՝ գերի անկաւ և Վասիլ տէր
Բարձրբերդոյ, որ և զայգ նոցին թուի յազնիւ տոհմէ
Հայոց, այլ ոչ է ծանուցեալ 'ի պատմութեան. իսկ բերդն
թերևս յայնմ ժամանակէ հետէ նուաճեցաւ 'ի Թորոսէ,
թէ և ոչ յիշի մինչև ցելս ԺԲ դարու, յորում ժամանակի
Գէորգ ոմն էր տէր նորին կամ պահապան։ — Յայտ է ևս
զի հանգոյն Լամբրունի էր և Բարձրբերդոյ աւան 'ի ստո֊
րև դղեկին, յորմէ ասի ընծայեալ 'ի վերջիւոյս այնր (ԺԲ)
դարու Կոստանդին կաթողիկոս Ա, որ յետ Ս. Սահակայ
և Փոքր Վկայասիրին՝ յերկարագոյն կալաւ զաթոռն, ամս
քառասուն և եօթն, և վախճանեցաւ յոյժ ծերացեալ.
այլ զի յոմանց Մաւրիանցի կոչի սա, 'ի դէպ է խոր֊
հրել և յայս անուն չէն մի հուպ 'ի դղեակն անուանի։
Աւանձինն իմն խնամք սորա 'ի վերայ հայրենի կողմանցս
յայտնին և յուխտն Անդրիասանց, զոր 'ի ստորև յիշե֊
լոց եմք. և մի է յերից վեհից՝ որք զուգաժամանակ և
յերկար խոհական տևողութեամբ յուժի և 'ի չքի պահե֊
ցին զթագաւորութիւն աշխարհին Սիսուանայ 'ի բազմար֊
կածեան ժամանակին, (Հեթում թագաւոր (1225=1270),
Կոստանդին հայր նորա (1219 = 1263), և համանուն
կաթողիկոսս այս (1221 = 1267). և որպէս առ երկո֊
քումբք առաջնովքն բազմապատիկ քաղաքական դէպք
անցին ընդ արքունիս, այսպէս և բազում եկեղեցական
դէպք առ սովաւ, և ծանօթութիւնք ընդ այլասեռիցն ե֊
կեղեցեաց, ընդ որոց գիտաց զգուշապէս քաղաքավարել։
— Թագաւորահայրն այն առեալ էր, ոչ գիտեմ յորմէ
հետէ, իբրև յիւր սեփական կալուած և նստոց՝ զԲերդս
այս Բարձր, որպէս լուաք յորդւոյ նորա Յովհաննէ, և
չինեալ ոչ հեռագոյն զգիւղն Կոստընդընոց. անդր չո֊
գաւ և արքայն Հեթում՝ յայն ինչ դարձին 'ի Թաթա֊
րաց յամի 1256, « ուր էր հայրն իւր Կոստանդին և ու֊
« տերք և դստերք իւր, և ուրախացան յոյժ »։ Թուի թէ
վասն ամրութեան տեղւոյն իբրև զմի 'ի դրանց աշխար֊
հին պահէր զայն խորագէտ և խնամոտ ծերունին. և ընդ
հուպ ստուգեցաւ այնպէս լինել, թէ և դժնդակ արկա֊
ծիւ, աւերանաց և հրկիզութեան մայրաքաղաքին Սսոյ,
զորոյ ոչ զբերդն կարացին առնուլ Եգիպտացիքն և ոչ
զԲարձրս այս Բերդ, որպէս տայ իմանալ Հեթում պատ֊
միչ 'ի սուղաքան ժամանակագրութեանն, զարշաւանս
նոցին « մինչ 'ի Բարձրբերդ » ասելով։ — Յելս կոյս այնր
(ԺԳ) դարու, եղերական գործ գործեցաւ 'ի սմա, որ֊
պէս 'ի Մոլևոնի՝ խարումն աչաց Հեթմոյ Բ հրամանաւ
եղբօրն՝ Սմբատայ թագաւորի, և սաստ միւսոյ եղբօրն՝
Թորոսի՝ թաթարօրէն խեղդամահութիւն լարիւ աղեղան,
('ի 23 յուլիսի, 1299)։ — Զայնու ժամանակաւ հաչակիւր

գիտութեամբ Վարդան Բարձրբերդցի վարդապետ, զոր տեսաք յառաջագոյն աշակերտ լինել Յովհաննու արքայեղբօր. և յայտ է ամենևիմբ զի սխալէին որք զմեծ վարդապետն Վարդան՝ զհեղինակ Պատմութեան և ըղմեկնիչ Հնգամատենին և այլ բազում գրոց՝ ընդ սմա շփոթէին. զի նա Արևելցի է և † յամի 1271, իսկ սա է Բարձրբերդցին, որ և յամի 1286 կոչէր զինքն աշակերտ Արքայեղբօրն. այլ թերևս ցարդ չփոթիցին երկասիրութիւնք նոցա երկոցուն համանուանցն, և որպէս կարգ բանիս պահանջէ՝ նաև համաշնորհից. այլ արդ գործ առանձին և ստոյգ ոչ ճանաչի երկրորդիս, և ոչ յիշեալն 'ի Ցակոբայ Նալեան, «Գիրք մի Ճարտասանութեան, ան- «Նման ոճիւ, խրթնապէս շարագրեալ». որ և կոչէ զսա «Վարդան Բարձրաբերդցի, այր իմաստուն և բանիբուն»: — Ի սմին ժամանակի և գրիչ ոմն՝ որ ոչ յիշէ զանուն իւր, յամի 1299 ընդօրինակէր «Հուպ յանառիկ » դղեակս Բարձր կոչեցեալ», զԽոկբիոսի Մեկնութիւն Յոբայ, հանդերձ Նարեկացւոյ մեկնութեամբ Ով է դա գլխոյն, զորոյ օրինակն՝ «մատոյց մեզ 'ի ձեր շնորհէ քահանայ ոմն Կարապետ անուն», ասէ գրիչն, այսու ձևով.

Յամի եւթնհարիւրերորդի քառասներ
որդի: ութերորդ թուաբերութեանս հայոց·
աւարտեցաւ մեկնութիւնս երջանիկ նշա
տակին յովհաննու յայսմ յայլ ժամանակ և
տեղի զանազան գրչաց· ի գաւառիս կիլի
կեցոց [illegible] յանառիկ դղեակս բարձրբե
րդ կեցեալ ի դառնագոյն ժամանակի յորում
յոյժ զզուիմք յանաւրինաց: ողորմեսցի
ի սմանէ զերախտաւորս և զաշխատեալս ի
սմա յիշել ի քրիստոս. և [illegible] բարիաւք
[illegible] յաւիտեանս.

Առ թագաւորութեամբ Լևոնի Դ., (1319-41), Բարձրբերդ էր 'ի ձեռս իշխանազանց տերանցն Նղրի, որք էին 'ի զարմից մեծին Կոստանդեայ արքայահօր. և որպէս համարի՝ թոռն Նորա Պաղտին մարաջախտ՝ իշխանաց իշխան՝ նստէր անդ. ուստի և յամին 1335 առաքեցաւ յարքայէն՝ ընդ Վասիլ Թղթագրի՝ առ Սուլտանն Եգիպտոսի, վասն պայմանաց հաշտութեան. այլ ամիրայն Հալպայ Ալթուն-պուղայ՝ խաբէութեամբ կալեալ էարկ զնա 'ի բանտ, ուր և վախճանեցաւ յետ եօթն ամսոց. յաջորդեաց նմա 'ի տէրութեան Բարձրբերդոյ՝ անդրանիկ Նորուն՝ Կոստանդ, ծնեալն 'ի Մարիունէ դստերէ Լևոնի՝ որդւոյ Սմբատայ Գունդստապլի, և յետոյ Թագաւորեաց Հայոց (1344—1363), և իւրով ձեռամբ գրէր 'ի Ճաշոցի մայրենի Նախահաւուն իւրոյ մեծի Գունդըստապլին, եթէ, «'ի Թվականութեանս Հայոց ՉՁԷ » (1338) յամենանն ավգոստոսի ԺԵ, սուրբ Աստուա- » ծածնի տաւնին, ծնաւ անդրանիկ որդին իմ Աւշին 'ի » Բարձրբերդ»: — Այս բերդ է փարսիբէ, Pharsipee, անուանեալն 'ի Մանտըվիլէ՝ հռչակեալ բազմաշրջիկ ճանապարհագրէ Անգղիացւոյ, որ ուղևորէր յարևելս յերկրորդ քառորդի ԺԴ դարու, և քաղաք կոչէ ընդ իշխանութեամբ Կրուգի? (Cruk) ուրումն փարթամ իշխանի և բարւոյ քրիստոնէի: Հաւանօրէն մնաց Բարձրբերդ յիշխանութեան Կոստանդեայ զաւուրս թագաւորութեան իւրոյ. յետ որոյ վաղվաղակի 'ի վերայ հասեալ վախճանի թագաւորութեան Հայոց, լռեցոյց և զազգային յիշատակս բերդիս. բայց թուի և յետ այնր ոչ միայն կանգուն մնացեալ՝ այլ թերևս և ընդ հզօր հայ ձեռամբ, որպէս և այլք ոմանք յանմատոյց բերդորէից Տաւրոսի և Գահուցն Կիլիկիոյ, անազան ուրեմն նուաճելոց յԵգիպտացւոց կամ 'ի Գարամանեաց, և կամ 'ի Զիւլգատրեանց. 'ի սոցանէ Շահսուար՝ յամի 1467 նուաճեալ զմեծ մասն Կիլիկիոյ, զքաղաքանի և զբերդորայ, «յետոյ և զԲարձրբերդ», աւաէ յիշատակագիրն: Աւանդեն ոմանք յՕսմանեան պատմչաց՝ 'ի ձեռս Հայոց լինել Բարձրբերդոյ և յետ այսր թուականի, և իբրու յամի 1485 նուաճեալ նոցա. զի ոչ միայն ազատօրէն կային անդ Հայք՝ այլ և նեղէին զանցորդս կողմանցն: Մինչև ցԺԸ դար բնակեալ էր աւանն Բարձրբերդ, և լքաւ առ աՀի աւազակաց, բայց տակաւին խնդրին հոլիցք նորին յամառնային եղանակի:

Ցեկեղեցական տեսչութեան՝ յիշեցաք 'ի տեղագրի Մոլևոնի զի եպիսկոպոս սորին Յովհաննէս արքայեղբայր՝ տեսուչ էր «և մասին ինչ Բարձրբերդոյ»: Ի սկզբան ԺԴ դարու յիշի Ստեփանոս եպիսկոպոս Բարձրբերդոյ՝ 'ի ժողովս Սսոյ և Ադանայ (1307 — 16). յետ նորա 'ի ժողովին Սսոյ առ Մխիթարաւ կաթողիկոսիւ՝ յամի 1342՝ Բարսեղ եպիսկոպոս: — Այլ թուի ինձ թէ սոյն այս վիճակ և Անդրիասանց թեմն նոյն է. զի մինչ հռչակաւոր բերդն ոչ յիշի 'ի թեմս յառաջ քան զԱրքայեղբայրն, յիշատակի Անդրիասանցն. և յաւուր թագաւորութեան Լևոնի յեւ ԺԲ դարու, եպիսկոպոս սորին էր Գէորգ անուն. և առ Արքայեղբարբն իսկ յամի 1264՝ էր սորա, (իբրու միւսոյ մասին Բարձրբերդոյ) «ա- » ռաքելաշնորհ եպիսկոպոսն տէր Պօղոս», որպէս կոչէ զնա Կոստանդին կաթողիկոս. և թուի յաջորդեալ զնա Սիմէոն եպիսկոպոս, յիշեալ յամի 1269, 'ի նոյն վանս, զոր անկ է արդ քննել:

32. Վկայեն յիշատակագիրք, որպէս գրող դեռ իսկ յիշեալ մատենին՝[1] յամի 1269, զի էր «Գերահռչակ ուխտս » Անդրիասանց մերձ յանառիկն դղեակ Բարձր անուն » կոչեալ». և վասն եկեղեցւոյն և սրբութեանցն՝ ասէ. «Ի » դուռն տօրս Սիոնի և կենդանի և աստուածընկալ սուրբ » Նշանիս»: Ոչ հասարակ մակդիր՝ այլ և յատուկ մարթ է գրել զկենսակիրդ՝ Խաչի տեղւոյս. քանզի և յայլում յիշատակի՝ վաթսուն և աւելի ամօք զկնի գրեցելոյ (1331), վճռագոյն ևս ասի. «Գրեցաւ եղանակաւոր տառս որ կո- » չի Մանրուսումն... 'ի սուրբ և 'ի հռչակաւոր Անա- » պատս՝ որ կոչի Անդրէասանց, ընդ հովանեաւ Սուրբ

[1] Որ է աւետարան մի, որոյ գրութիւնն սկզբնաւորեալ՝ 'ի Մաշկեւոր վանս, ուր և տեսցի յետոյ, աւարտեալ է աստ յԱնդրէասանցս ու խաս:

» Միոնի և կենսակիր սուրբ նշանի »: Գրող սորին է կա» բապետ քահանայ Վայրի մականուանեալ, ստացողն պատուական և սրբասէր Ցովհաննէս քահանայ: Իսկ առաջնոյն (աւետարանին) գրող է Գրիգոր կրօնաւոր վասն Ծերուհ անուն քահանայի, « յառաջնորդութեան Տեառն » Սիմէոնի և այլ միաբան եղբայրութեանս ». և ողբալով իմն գրէ, զի սակաւուք յառաջ ականատես եղեալ էր մեծի սասանութեան և կործանման Սարուանդաւի և վանորէիցն. վասն այնորիկ, ասէ, « անտուն անտեղ » շրջէաք, ոչ ունելով տեղի հանգստեան »: Ձեռնագրէ ընդ նմին և ոմն « Նուաստ Հեթում֊Ստեփանոս, սպասա» ւոր բանին Աստուծոյ »: — Սակաւ ամօք յառաջ քան զայս Կոստանդին կաթողիկոս շնորհեաց ուխտին Անդրիասանց գեղեցկազարդ աւետարան մի, զոր յամի 1244 տուեալ էր գրել և նկարել Կիրակոսի ումեմն 'ի Հռոմկլայ, գրելով 'ի նմին և վճիռ' զայս ձև օրինակի.

Ա յամերգիր հրամ
անիէկոստանդեած
առայիայննովարկա
Թողիկոսիամենայն
հայոց · որզաւետար
անսմեզ·զորգրեէնք
ծախիւք · և ծաղկեր
անդ զարդարեղոսկո
վ ևներփն երփնգոյնի
ք : ևկազմեալոսկով
ևարծաթով = տուաք
ին̃քոխտնանդրիաս
անցկատաքեղաշնոր
հեպիսկոպոսն տրոյ
ատղոս կամաւեղբ
աւրորդւոյն մերոյթո
րոսիքահանայի:յի
շատակմեզևծնող
այմերոյ

և յարէ 'ի բանսն. « Որ յամենայն ամի 'ի սուրբ Խաչին » ութաւրէքն առնեն ե պատարագ. մին հաւր իմոյ Վա» հրամա, և միւսն մաւր իմոյ Շուշկանն. երրորդն եղբաւր « իմոյ Գէորգեա քահանայի հաւր Թորոսի. չորրորդն միւս » եղբաւր իմոյ Գրիգորի. հինգերորդն Գրիգորի Նորին » որդոյն: Եւ մի ոք իշխեսցէ հանել զաւետարանս յայն » սուրբ ուխտին ժառանգութենէն. և որ հակառակի և » հանէ զսա, ընդ բանադրանաւք մնասցէ: Այս եղև 'ի » Թվ. ՉԺԳ » (*): Ի հնագոյն քան զայսոսիկ յիշատակի Անդրիասանց' տեսաք զայն 'ի վեր անդր' յեւս ԺԲ դարու' իբրև Թեմ եպիսկոպոսական, զԳէորգ ոմն ունելով տեսուչ. յորմէ յայտ է զի վաղու ևս հաստատեալ էր ուխտն այն, և որպէս Թուի յառաջ իսկ քան զնուաճել տեղւոյն 'ի Ռուբինեանց, ոչ գիտեմ 'ի Հայոց եԹէ 'ի Ցունաց. քանզի 'ի կողմանս յայսոսիկ լերանց Տաւրոսի եղև նահատակութիւն և ամփոփումն նշխարաց քաջայաղԹ վըկային Քրիստոսի Անդրէի Զօրավարի և Բանակի նորին, որոյ տօն կատարի յամենայն եկեղեցիս, յ'19 օգոստոսի, ըստ Ցայսմաւուրաց մերոց և ըստ այլոց: Ի վկայաբանութեանն' որոյ գտանի և առ մեզ հին Թարգմանութիւն, յիշին ոչ սակաւ տեղիք ըղձալիք 'ի ճշգրտել, այլ զանխուլ մնացեալք' նա և 'ի սակս այլայլութեան անուանցն և անկարգ դասաւորութեան պատմութեանն, գէԹ ըստ այժմու ծանօԹ օրինակաց: Արդ ըստ այսմ 'ի մերում Թարգմանութեան ասի վասն Սրբոցն, ելեալ 'ի Տախսնէ, « Եւ ճանապարհ կալեալ ընդ կողմն Տաւրոսի ... Եւ հաս» սեալ 'ի Տարմեղինէ և 'ի կողմ Եքսանի, և բանակեցան » 'ի տեղւոջն որ կոչի Քափսորիոս և Քարափարոն, 'ի դըժուարին վայրս, 'ի հովտի միում' 'ի մէջ լերանց, գետ » փոքու ընդ մէջ անցանելով: Իսկ Սելեւկոս պնդեցաւ » զհետ նոցա, և հասանէ 'ի Նեղուցս Քափսորայ, և պա» շարեաց զնոսա »: Իսկ լատին Թարգմանութիւնն [1] զառաջին տեղիսն ուր եկին 'ի Տարսոնէ' կոչէ Taxanite (Տաքսանեան), և Tamalme, որ է մերս Տարմեղինէ, և փոխանակ Եքսոնի' Orchesum բերդ, որ ըստ ձայնին յանգակից է Վօւկիս բերդի յիշեցելոյ 'ի Գունդստապլէն. բայց լատին (կամ յոյն) վկայագիրն ասէ զբերդն լինել 'ի Գաւառի Հայոց մերձ 'ի Մելիտինէ. իսկ զերկոսին յետին անուանսն' համաձայն մերոյս գրէ Chausorius կամ Capsurius և Charavatinum. յաւելու նա և զյատուկ անուն Նեղուցին' Androcalon, Անդրոկալոն. և այսպէս ասէ կոչել տեղւոյն' վասն երկուց լերանց մերձաւորաց դէմ առ դէմ կալով զրեաԹէ և յիրեար կցելոց, վըտակաւ լռկով անջրպետելոց: Անդանօր եղև նահատակութիւն սրբոցն, ուր և բղխեաց աղբիւր բժշկութեան. և եկեալ Պետրոսի եպիսկոպոսի Տարսոնի և այլոց ընդ նմա, տեսին « զնշխարսն սրբոյ Բանակին, և ամփոփեցին » 'ի տեղի հանգստեանն անյայտաբար. և դարձան յիւ« րաքանչիւր տեղիս »: Բայց բնագիրն ասէ ոչ գտանել նոցա 'ի տեղիս իւրեանց' 'ի Կիլիկիա, զի հալածիչն Սելեւկոս զօրավար' կամէր ըմբռնել և զնոսա, այլ գնալ յի-

1 ... Exiit in locum qui dicitur Taxanite ... porro Andreas cum et e loco Taxanite discessisset, totum montem Taurum peragravit usque ad fines ejus regionis quæ Tamalme dicitur; cum venisset autem ad Castellum quod dicitur Orchesum, in Armeniorum provincia situm prope Melitinensium illustrem metropolim, pervenit inde ad Chausorii et Charavatinensium regiones ... Tum persecutor ille (Seleucus) cum id didicisset, celeriter venit ad locum qui dicitur Capsurius. Celeberrimus autem martyr una cum fidelissimis suis militibus secum versantibus properavit ad eam regio-

*տարիս. յորմէ մարթ էր կարծել զդիրս տեղւոյն ընդ մէջ Գահոուն Կիլիկիոյ և Իսաւրիոյ՝ կամ 'ի հիւսիս-արևմտեան դէմս լերանցն: Իսկ Յայսմաւուրք մեր զտեղի նահատակութեան Անդրիասանց՝ առեն «մերձ 'ի Վահկայն»: Անուանք տեղեացն առաւել հայկական հնչեն քան յունական, և 'ի դէպ է կարծել թէ և անդստին յԳ դարու բնակեալ էր անդ Հայոց. և ոչ է օտար իմն, զի չեն հեռի վայրքդ 'ի Կոկաց գաւառէ կամ 'ի Կոկիսոնէ, ուր յետ դարու միոյ՝ մեծն Ոսկիբերան՝ 'ի տարագրութեան իւրում՝ եգիտ ընդարձակ վիճակս Հայոց հանդերձ եպիսկոպոսաւ նոցին: Հրապուրէր իմն և զերկոսին անուանսն՝ Քարաւատ կամ Քարապատ և Հաւձոր կամ Նապձոր լըսել, և զվկայագիրն համարել հայազգի՝ այլ յունաբան, և գրուածոյն վերատին 'ի յունէ 'ի հայ փոխելով այլայլել անուանցն: Ընդունելի ևս արդեօք իցէ զ*Chausorius *ճահանչել* Խոզձոր. *զի արդարև այսպէս կոչէր նեղուց վայրացն՝ մերձ յուխտն Անդրիասանց՝ ըստ վկայութեան կիլիկեան Պատմագրի մերոյ, յամի 1272, յորում «Թագաւորն Լևոն (Բ) հրամայեաց շինել ամրոց առ լերամբն » Տաւրոսի, հանդէպ քաղաքաղթ Զաւրավարին* Անդրէի » Պահարանիցն, *կիսօրեայ ճանապարհաւ հեռի, 'ի » պահպանութիւն այնմ գաւառին և հայակաւոր ճանա» պարհին* Խոզձորոյ. *որ և 'ի նոյն ամին յոր սկսաւ՝ » կատարեաց զնա. և անուանեաց զնա »...: Ցուէ զի դատարկ թողեալ է տեղի անուանն. Նոյնպէս ոչ յիշի ուրուշակի՝ որ իցէ այն գաւառն յորոյ պահպանութիւն կանգնեցաւ նորաշէն բերդն. այլ իմանի կամ նոյն իսկ լեառն Տաւրոսի կամ Պահարանքն Անդրէի, և կամ յանուն իսկ բերդին կոչեցեալ յայնմ հետէ շուրջ սահմանացն: — Նաև ըստ այսմ հաւանելի է ինձ* Լեւոնկլայ *լինել բերդիդ նորոյ. ոչ միայն զի վայելուչ էր այնպէս կոչել յանուն շինողին, զոր օրինակ և Սմբատակլայն՝ յանուն հօրեղբօր նորին արքայի, և այլք, այլ զի և ոչ յիշի յառաջ քան զայս ժամանակ՝ յայդ անուն բերդ, որպէս արժանն պահանջէր յիշել՝ եթէ գոյր շինեալ 'ի մեծէն Լևոնէ կամ 'ի հաւոյ նորուն 'ի Պարոն Լևոնէ. և զի յիշատակագիր մի 'ի սկիզբն ԺԴ դարու (1302) հաւաստէ մեզ սահմանակիցս լինել զԲարձրբերդ և զԼևոնկլայ: Նոյն համարիմ զկլայդ ընդ* Լեւոն-Բերդի, *զոր յետին յիշատակագիր ասէ վասն Շահնաւարի՝ այլովք հանդերձ նուաճեալ յամի* 1467: *Ի տեղագրի վիճակին Զէյթունի տեսցի զի դեռ նորին Ալապօզան՝ Անդրիասանք կոչի ցարդ 'ի Հայոց:*

83. *Հպագոյն 'ի Լևոնկլայ քան 'ի Բարձրբերդ կարծեմ զմի 'ի հռչակաւոր և հին վանորէից Կիլիկիոյ՝ զկոչեցեալն* Խորին Անապատ. *զորմէ հաւաստաբար ասէ յիշատակագիր ոմն յամի 1302, զոլ «մերձ 'ի սահմանս » Բարձրբերդոյ և Լևոնկլային՝ անառիկ դղեկացն». զշինութիւն վանացն՝ հայր մեր Չամչեան ընծայէ Կոստանդնի Թագաւորահօր. մարթ է նորոգող կամ վերականգնող համարել, եթէ ստոյգ իցէ գրեալն 'ի Յայսմաւուրս՝ զԳէորգեայ Մեղրկայ, հաստատել ոչ միայն 'ի Դրազարկ՝ զհսկումն կիրակամտից՝ այլ և «'ի Խորին Անա» պատն՝ որ յաշխարհին Կիլիկեցւոց, 'ի Սիս». սակայն Մատթ. Ուռհայեցի և հետևող նորին Պատմիչն մեր՝ միայն զԴրազարկ յիշեն և ոչ զԽորին. վասն որոյ հաւանելի է յԺԳ դարու շինութիւն և պայծառանալ տեղւոյս. յորում՝ 'ի վերջին ամս Ա Հեթմոյ՝ Բասիլ ոմն կամ Վասիլ և Աստուածատուր եղբայր նորին՝ գրելով Ճառընտիր մի մեծադիր, առաջին առաջնորդ և առաջին հիմնարկող սուրբ ուխտիս կոչեն զ*Ստեփանոս, *և մաղթելով վասն հոգւոյ նորա՝ ոչ շատ կանուխ ժամանակաւ ցուցանեն վախճանեալ. յետ նորա թուի կեցեալ* Բարսեղ, *որ «զօրինակս » (գրոցս) պարգևեաց, ասէ, և ինքն զկնի սակաւ աւուրց » փոխեցաւ յաստեացս. և էր առաջնորդ աստուածա» բնակ ուխտին Խորնին»: Քանզի պակասէ բուն յիշատակարան մատենին, այլ մեծութիւն նորին և հակիրճ յիշատակքն յայտ առնեն բովանդակ ամս տևեալ գրչութեանն. զի յէջ 341 նշանակի մահ Հեթմոյ արքայի (1270, հոկտ. 28) և յէջ 367-8 ասի. «Յայսմ վայրի խաղաղու» թեան կարօտանամք յաղախնածին Հագարացւոց (յար» ձակ)մանէ». որ թուի նշանակել զեղեալսն յաւուրս Լևոնի Բ. այն ժամանակի առաջնորդ ուխտին որ և ստացող մատենին՝ էր* Երիանոս, *ընդ որում և* Պետրոս *զուգապէս կոչին Դիտապետք մենաստանիս. առ որքօք և «Յովհաննէս կրօնաւոր և փակակալ սուրբ Անապատին » Խորնին ... որ օժանդակ եղև օրինակիս, և այլ միա» բան եղբայրութեանն, որք բարւոք յօժարեցան վեր» ասացելոցս և ինձ ... Բասլի»: Յիշին ընդ սոսին և «Աս» տուածատուր քահանայ որ 'ի բազում կողմանց ջանայր » յօժանդակութիւն». կամ, «որ բնաւին սպասաւորէր*

nem, quæ dicitur Androcaloni, ed in Tauri montis angustias se dejecit. Causam vero quare *Angustiæ* vocentur, ejus loci figura declarat. Duo enim montis juga vicissim sibi opposita, ac paulatim coeuntia, fere inter se copulantur: sed flumine (*Պիւռամոս կարծէ ծանօթարարն*) præterfluente distincta, angustias quasdam efficiunt, quæ fere inviæ sunt: hiatum vero præcipitem inter se habent, magnum illum quidem, et vel iis qui ipsum adspiciunt, terribilem. Hac de causa ejus loci situs talem appellationem accepit. — Acta S. Andreae Tribuni ac Sociis.

(*) *Կենդանական յիշատակագիր կաթողիկոսին Կոստանդեայ որ 'ի հանդէպդ (էջ 150), և այլ միւս ևս յիշատակարան՝ այսպէս ցուցանեն զազգատոհմն նորին՝ ըստ որս աղդ. յորոց վախճանեալքն նախ քան զամն 1254՝ նշանակին խաչանշանաւ †.*



» Նուէթոց և ամենայն պիտոյից ». և Բարսեղ քահանայ « որ » յարդար ընչից իւրոց օժանդակեաց 'ի մատեանս յայս ». Տիրացու եպիսկոպոս' հօրեղբայր և ուսուցիչ գրողին, և Առաքել Նորին եղբայր. Առաքել կրօնաւոր « որ երբեմն » տեսուչ էր այսմ անապատի ». Կոստանդ ծերունի հիւրատես, Թորոս և Գրիգոր' տնտեսք, Վարդ մանուկ պարտիզպան, և այլ ոչ սակաւ քահանայք, կրօնաւորք և սարկաւագունք. յորոց 'ի չար անկանի և Հիպա հոգևոր քոյր գրչին և մայր Խաչատրոյ սարկաւագի, և այլ կին մի անուն Շնոհաւոր, « որ 'ի չքաւորութենէ իւրմէ' մի անաս» նիկ ունէր ծննդական, և զայն' վասն բարի յուսոյն իւ» րոյ' յօգնութիւն ետ գրոցս » : — Ցայսքան և յայսպիսի յիշատակս ոչ յաւելու և զորութիւնս ուխտին, զոր նախագրեալ յիշատակագիրն 1302 ամի' ծանուցանէ մեզ, գոլ « ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սրբոյն » Գրիգորի և սրբոյ Նշանին և այլ Սրբոցս ». գրողն այն է Թումա Համկլայեցի, որ յետ առման այնր կաթողիկոսական աթոռոյ յեգիպտացւոց' և կոտորմանն բազմաց, ընդ որս և ծնողաց և հարազատաց իւրոց, խոյս տուեալ եկեալ այսր' տրտմութեամբ գրէր զգիրս Թղթոց միաբանութեան Հայոց և Յունաց: — Յառաջ քան զայն և յետ Երիանոսի' առաջնորդ եկաց ուխտին Կոստանդին Պրօնագործ Կեսարացին, յամի 1286 ամբարձեալ 'ի գահ կաթողիկոսութեան Հայոց, յաւուր Ծրագալուցի զատկին, յ'13 ապրիլի, և յետ չորից կամ հնգից ամաց (1290) բռնադատեալ հրաժարել. որ և յետ մերկանալոյ զքահանայապետական զգեստն և ծալելով դնելոյ 'ի վերայ արծաթի սեղանոյ, « ետ բերել մազեղէն մի սեաւ և » յոյժ խոշոր և զգեցաւ, և 'ի նոյն մազեղինէն քուսի» թայ եդ 'ի գլուխն, և ողջունեալ զամենեսին ել 'ի տա» նէ եպիսկոպոսարանին միայն և լալով ». Թերևս դարձաւ այսր 'ի մենարան իւր յԱնապատն Խորին, մինչև կարգեալ տեսուչ Սկևռայ, ուր տեսաք զգործ նորա (յէջս 107-112), և ապա վերստին կոչեցաւ յաթոռ կաթողիկոսութեան, և հովուեաց ընդ երկար ևս (1307-23): — Առ սովաւ 'ի ժողովս Սսոյ և Ադանայ յամս 1307-16, ընդ միաբանեալսն յիշի առաջնորդ Խորին Անապատի' Բարսեղ: Յետ սորա յամի 1319 Հայր Կոստանդ, որ կոչէ զինքն « անպիտան և անիմաստ սպասաւոր բանի ». այլ զի ասէ « յորժամ էի պաշտօնեայ սուրբ Ուխտին » Խորնին », թուի յետոյ հրաժարեալ. սա յամին յայնմիկ նշանակելոյ' ասէ կարգաւորեալ զՃաշոց Գունդստաբլին Սմբատայ' հրամանաւ Պաղտին Մարաջախտի ժառանգողի զնոյն, վերածելով զՑՆնդեան և զԱւետեաց տօնս' ըստ աւուրց լատինական ամսոց, և ըստ սահմանի ժողովոցն եղելոց յաւուրս նախայիշելոյդ Կոստանդեայ կաթողիկոսի և Օշնի թագաւորի:

Յետ այսորիկ մի անգամ ևս գտանեմ զյիշատակ Անապատիս յամի 1325, ընդ յիշատակի այլոյ մենաստանի 'ի նոյն կողմանս, այն է Փերձեր կամ Պերձեր. ըստ յետնոյս անուանագրէ Խաչատուր սարկաւագ գրիչ աւետարանի միոյ անդ' յամի 1299, վասն Սարգսի քահանայի եղբօր Պօղոսի կրօնաւորի. յիշէ և զՊօղոս քահանայ « որ աշխա» տեցաւ յըղորդել սրմս » (մագաղաթին), այլ և զԴաւիթ և զԹորոս, որք թուին միաբանք. և զեկեղեցիսն Ս. Սիոնի և Ս. Նշանի: Յետ ամաց քսան և վեցից ծանուցանէ այլոյ մատենի գրիչ, այսու օրինակաւ և ձևով, (և փոխանակ պիտակ կոչելոյ զինքն ապիտակ գրելով).

34. Շարական գրեալ 'ի Փերձեր, 'ի թուին ՉՀԴ (1325):

Ի Նմին մատենի գտանի այլուր գրեալ և այս յիշատակ. « Կոստանդեայ Հերմըննցւոյ Տէր ողորմեա, եւ ամենայն ուղիղ հաւատացելոց »[1]: — Ցիշի և յամի 1342 ընդ ժողովականս Սսոյ՝ Դաւիթ հայր փերճերոյ, David Abbas de Perger, գրեալ 'ի լատինն. և զի անծանօթ էր անունդ յառաջագոյն՝ Զամչեան հայր մեր վրիպակ կարծելով՝ փոխեալ է 'ի վանք փրկչին:

Ոչ այս միայն վանք, այլ միւս ևս և 'ի նոյն սահմանս խորին Անապատի՝ չինեալ ասի 'ի Կոստանդնէ Թագաւորահօրէ, Միակեցեր անուանեալ. որոյ առաջնորդ համարի յիշեալ Հայրս մեր՝ զՍտեփանոս 'ի Նմին ժողովի Սսոյ. բայց 'ի լատինն անծանօթ իմն անուն գրի վանացն Quessedan ?: Ոչ գտի 'ի գիրս յիշատակ ինչ զտեղւոյս. որպէս և ոչ զԼիսանկան վանաց, զոր՝ նոյնպէս ասէ Զամչեան՝ հաստատեալ Թագաւորահօրն, այլ ոչ նշանակէ սահմանն, մօտ իցէ եթէ հեռի 'ի կողմանց Բարձրբերդոյ. իսկ ուր յետնոյս առաջնորդ կոչի Կոստանդին՝ 'ի Նմին ժողովի, 'ի լատինն անուն տեղւոյն գրի Lisernat (Լիսեռնատ):

54. Վեհագոյն ոչ միայն քան զսոսին՝ այլ և քան ըզխորնի իսկ անապատն՝ գտանէր 'ի նոյն սահմանս և այլ Անապատ, Ականց անուանեալ կամ Ակներոյ վանք. զոր ստէպ յիշեալ բազմաց՝ ոչ նշանակեն զդիրսն. սակայն մի ոմն 'ի յետնոց՝ յամի 1326՝ ասէ լինել 'ի գաւառին Ցամոնց կոչեցեալ. զայս գաւառ յիշէ և Պատմիչն Կիլիկիոյ, յաւելն վասն Ցովհ. Աղեքսի կայսեր՝ յամի 1137 նուաճեալ « զԱնարզաբա, զՎահկայն, զԱմայքն, զՑախուտն և » զայլ ամրոցսն ». որով գուշակի յարեւմտակողմն Ակներոյ լինել. և քանզի նոյն պատմիչ զգեօղն Ակներ ասէ լինել « առ ստորոտով Բարձրբերդոյ », յայտ ուրեմն է զի և Ցախուտ գաւառ սահմանորդ է Նմին, որպէս Մոլեւոնն, այլ սա յարեւմտից, իսկ Ցախուտ Թուի յարեւելից և 'ի հիւսիսոյ. զի Կիրակոս Պատմիչ ասէ վասն վանացն, « Եզր էր տեղին այն », և համարիմ 'ի սահմանածայրս տէրութեան Հայոց: Ցանուանէ գեղջն անշուշտ և մենաստանն կոչէր, և երկոքին իսկ Թերևս 'ի սակս ականց աղբերաց 'ի մօտոյ ուստեք բղխելոց. յորս հաճեցեալ արդեօք խորահայեացն Լևոնի Ա Թագաւորի, 'ի վեր քան զայլ բազում վանորայսն՝ զորս կարգէր, ըստ բանի պատմչին Կիրակոսի, « ընդ ամենայն կողմանս տէրութեան » իւրոյ, և բազմացուցանէր զպիտոյս նոցա », առաւել սիրեաց զայս դաստակերտ իւր. զի և զսա միայն առանձնորէն և յանուանէ յիշէ Պատմիչն, ասելով. « Ցորոց մի » է 'ի վանորէիցն զոր կարգեաց նա՝ հռչակաւորն Ակներ » անուն կոչեցեալ վանքն[2]. որ մինչև ցարդ ևս վարին նո» վին կարգադրութեամբ՝ զոր նայն կարգեաց. զամենայն » աւուրս շաբաթուն պահօք կատարել, այլ միայն լուծանել զշաբաթն և զկիրակին՝ ձկամբ... Զի յոյժ սիրէր » նա զայն վանսն, վասն բարիոք կարգաւորութեանն նոցա և հաճոյական աղօթից »: Զայս՝ անժխտելի ևս փաստիւ հաւաստեաց մեծն այն, 'ի կամելն՝ « զի յորժամ մեռանիցի՝ անդ տարեալ Թաղեսցեն զնա : ... Եւ հասեալ 'ի գեօղն Մրվանայ՝ անդ զտեղի կալաւ, զի տըկարացաւ մարմինն 'ի ցաւոյն »: (Ոչ հեռի 'ի վանացն համարելի է գեօղս այս, այլուստ անծանօթ, բայց Թերևս նոյն իցէ ընդ գրելումն Մավահաւն՝ զոր յառաջն յիշեցաք (յէջ 148) իբրև հայրենիս Կոստանդնի Ա կաթողիկոսի Բարձրբերդացւոյ): Եւ « իբրև փոխեցաւ 'ի Քրիստոս բարի » խոստովանութեամբ, սահմանեցին այսպէս. զի հանցեն » զփորոտին և տարցեն յԱկներն, և զմարմինն տարցեն » 'ի Սիս »: Ընդ փորոտեացն իմանալի է և սիրտն վեհմական, զոր և որոշակի յիշէ Կիրակոս. « Զսիրտն և » զփորն տարան 'ի վանքն Ակներ »: Եթէ չգոյր Ակներոյ այլ ինչ տեղի պարծանաց՝ մեծագոյն արդեօք էր այս, գողանալ 'ի կեանս և 'ի մահու զայնքան մեծ սիրտ. և 'ի վեր քան զամենայն բազմահոյլ դաստակերտս Նորին և ամրոցս և ընդարձակ ծագս սահմանաց իշխանութեանն, լինել Նմին արժանաւոր և մշտնջենաւոր պահարան:

Սեփական իմն շնորհք Թուին տեղւոյս կամ տեղաբնակացն, սփոփել զսիրտս մեծամեծս, որոց անբաւական գտանէին այլ վայրք. զի ահա և որ յետ Լևոնի վեհագոյն բնաւից գտաւ 'ի Թագընկալ պայազատս՝ փեսայ Նորին և յաջորդ, մեծագործն և մեծահոգին Հեթում Ա, յետ երկարամեայ բազմայեղանակ Թագաւորութեանն, զստակագոյն 'ի վերջէ կրելով կիրս, զանակնկալ պարտութիւն բանակին, զսպանումն միոյ յորդւոցն և զգերութիւն անդրանկանն, « բեկաւ սիրտն 'ի կարի և յանհնարին տըրտմութենէն՝ որ յանկարծահաս դիպեցաւ, և ոչ կարէր կանգնել զսիրտ իւր, մինչև եկն 'ի սուրբ և 'ի գերահռչակ ուխտն միանձանց, 'ի յԱկանց անապատն. » և աստ մխիթարեալ սակաւ մի 'ի միեղէն եղբարց սուրբ » ուխտիս, կեցեալ աւուրս ինչ, մինչ եկաւ Թուրքն յերկրէս »: Քանի՛ խորամուխք և աղէկտուրք էին հառաչանքն այն Հեթմոյ՝ 'ի մնարս սափորոյն՝ որ կրէր զսիրտ Լևոնի. — արդարև, ըստ խորհրդածութեան պատմչիդ[3], « զսիրտն (այն) ինքն և Աստուած միայն գիտէին, թէ » որպիսի՛ կրակով լցեալ էր »: Թուի ինձ Թէ և գաղտնի բաղդ սահմանեալ էր՝ ոչ հեռի 'ի ցամաքեալ սրտէ անտի մեծի Նախորդին իւրոյ և աներոյ՝ աւանդել և ինքեան զիւրոյ սրտին յետին բաբախումն. քանզի աստանօր իսկ

[1] Առ գիւրութիւն ընթերցւածոյ լուսատիպ յիշատակարանին նախակարգելոյ՝ որ 'ի հանդիպակաց իջի (152) ընդօրինակեմք զնոյն հանդերձ յաւելուածովն. « Ցամի ուԹնհարիւր և ուԹսնասուն և » չորեքերորդի Թուաբերութեանս Հայոց (1325) 'ի Թագաւորու» Թեանն Հայոց Լևոնի որդւոյ Աւշին Թագ": և ի կաթողիկոսու» Թեանն Կոստանդեայ Լամբրունցւոյ. գրեցաւ երգս այս շարակա» նի ի ձեռս Խորին անապատի ի վանքս փերճեր: Ընդ հովանեաւ » սուրբ Սիոնի և սուրբ Նշանացս Քրիստոսի ձեռամբ ապիկար և » ձեռով անուամբ քահանայի Կոստ: Ի խնդրոյ որբասէր և աղանա» տիպ ծերունի հաւրն Թուխանի: Ի վայելումն դեռաբոյս պատա» նեկին քեռորդւոյ նորին Պաւղոսի: Արդ աղաչեմ զամենեսեան » վասն սիրոյն Քրիստոսի յիշեցէք ի բարին Քրիստոս զՏէրդպրեալս » այս զծերացեալ կրաւնաւորն Թուխան, և զբարեպաշտուհի քոյրն » Թանկ, և զծնողսն իւր զհանգուցեալսն ի Քրիստոս, զհայրն իւր » Անձրև և զմայրն իւր և զամենայն զարմն իւր: ... Ընդ Նմին յիշեցէք զհեզն և զբարերոյս միւս քեռորդին իւր Կիրակոս. Նաև զուզորմելի գծրիս ծրագրաւղ սմին Կոստ. և անմեղադիր լերուք զի » կար մեր այսչափ էր. և յընտիր աւրինակէ էր »:

[2] Նոյնպէս և Վահրամ.

« Զականաւոր ուխտըն կազմեալ
Որոյ՝ Ակներ անուն ձայնեալ »:

[3] Մաղաքիա Աբեղայ պատմիչ:





յԱկներ գեղջ՝ դիպաւ և իւր օրհաս մահուն, 'ի 28 հոկտ. 1270 ամի, թէպէտ և ոչ աստէն հանգուցաւ. այլ բարձեալ զմարմինն՝ տարան թաղեցին 'ի Դրազարկն. սակայն աստանօր կանխեալ՝ բարեաւ մնա ասաց աշխարհի, յառաջ քան զբնական մահուն՝ զկամաւորն տուեալ հրաժարական կենցաղոյս. ընդ մէջ արքունական ծիրանեացն և յետին պատանացն՝ արկեալ զիւրեաւ զկրօնաւորականն սքեմ, և 'ի ճգնաւորական կոչումն Մակար՝ պճոխելով գլխանամեայ հռչակեալն ընդ արևելս և ընդ արևմուտս Հեթումն անուն: Այսպէս յետին նսեհ երկոցուն վեհիցն որք փայլեցուցին և բարձրացուցին զմիջոց ժամանակի բովանդակ հարստութեան ազգիս՝ յերկրին Սիսուանայ (պամ 85), յիրեար խառնեալ՝ զուգեալ գտան յայս մի կէտ անձուկ առանձնութեան, որ ինքնին իսկ արդ զանխուլ մնայ առ 'ի մէնջ. 'ի նոյն 'ի լռութիւն համակեալ և յետ նոցին այլոց աւագ մարդկան. յորս հուսկ վեհագոյն երևեցաւ և դրուատեցաւ յաշխարհի աստ Սիսուանայ՝ Պաղտին մարաջախտ և իշխանաց իշխան, յանդորրութիւն հայրենեացն նահատակեալ 'ի բանտի Բերիոյ, ուստի և բարձեալ բերաւ հանգուցաւ ընդ աղօթանուէր հովանեաւ ուխտիս Ակներոյ յամի 1336:

Եկեղեցիք վանացս յիշին Ս. Աստուածածին և Ս. Առաքեալք, յաւուրց Լևոնի Մեծի (1215). յորում ժամանակի յիշէ Պետրոս ոմն եղբայր Սիմէոնի՝ գրիչ ճառից Ս. Եփրեմի, « զսուրբ և զպատուական և զաստուածահաճոյ » այրն զԹորոս, զԱկանց անապատի առաջնորդն », և երիցս երանեալ ևս կոչէ, և զտեղին՝ ցերանիչակ Անապատ. յորմէ գոյ գուշակել զի ոչ սակաւ ամօք յառաջ հաստատեալ էր. քանզի և երեսներորդ ամ էր այն իշխանութեան շինողին Լևոնի: Ի վերջին ամս Հեթմոյ՝ յիշելով բանասիրի ուրուք զգիտ թարգմանութեան ներբողինի Ոսկիբերանին (կամ Թէոփիլոսի) 'ի Ս. Լուսաւորիչն, ասէ. « Համբաւ սորա իբրև զպսակազարդ թա- » գաւորի՝ հասեալ 'ի յերկնանմանն սուրբ և աստուածա- » բնակ անապատն 'ի յԱկներն, առ լուսազգեստ սուրբ և » երջանիկ հայրն Ստեփանոս, և նորա առաքեալ որա- » կըս՝ և հրամայեաց գրել և աւանդել զսա 'ի դուռն » սուրբ տաճարին Աստուածածնին, 'ի պայծառութիւն » տօնի մեր Լուսաւորչին և 'ի յիշատակ հոգւոյ իւրոյ »: Զուսումնասիրութիւն սորա յայտնէ և ինքնագիր յիշատակարանն՝ իբր յամի 1273. « Ես նուաստս յամենայնի » Ստեփանոս հայր Ականց անապատիս, ետու գրել ըզ- » պատմութիւն Միխայէլի պատրիարքի Ասորւոց », և այլն. իսկ գրիչ մատենին Գրիգոր՝ աղաչէ զընթերցողըն՝ ասել, « Տէր Աստուած ողորմեացի Հօր Ստեփան- » նոսի առաջնորդի սուրբ ուխտի Ակներոյս և ամենայն » ննջեցելոց իւրոց,... փակակալ Վարդանայ,... ամենայն » գործաւորաց և սպասաւորաց սրբոյ ուխտիս, առա- » ջնոցն և միջնոցս, այլ և վերջնոցն՝ որ գալոց են զկնի » մեր,... Կոստանդ և Սիոն քահանայիցն, և համաշունչ » եղբարցն որ զթուղտս կոկեցին...: Յիշեցէք 'ի Քրիս- » տոս և զպատուական քահանայն զՅովհաննէս, որ » զվերջին տետրս գրեաց, զի մեք էաք յոյժ տկար և ան- » խել: Յիշեցէք և զՀայր Թադէոս՝ զՀայր Աւագ անա- » պատին որ զօրինակս շնորհեաց »: — Թուի առ վայր մի դադարեալ յԱկներ և արքայեղբօրն Յովհաննու, զի յիշի աւետարան մի իւրով ձեռամբ գրեալ նորա աստ յամի 1287: — Ի վերջ կոյս ԺԳ դարուս՝ յամի 1293 գրեալ է ուրեք այս հակիրճ յիշատակարան. « Զսուրբ » գիրս այս՝ զՍաղմոսաց մեկնիչս, Յոհաննէս ճլուզ վար- » դապետ 'ի յիւր մահուն օրն՝ պարգևել էր Ակներոյ վա- » նացս, իւր հոգոյն յիշատակ. Քրիստոս Աստուած հան- » գուցէ զիւր հոգին »: Համարելով զՃլուզդ վանական Ակներոյ, յիշեսցուք և զմիակ ծանօթ մեզ գրուած նորին՝ տաղ մի սրտառուչ՝ յԵլս Ս. Լուսաւորչին 'ի Վիրապէն. որոյ սկզբնատառք տանց կազմեն Գրիգորիոս Լուսաւորիչ Հայոց. և սկսանի այսպէս.

« Գրիգորիոսի բազմաչարչար Սրբոյն
Ջելն 'ի Վիրապէն՝ այսօր տօնեմք, եղբարք.
Րախճան ցընծութեան Հայաստանեայցս եղեն
Կուսանքն երջանիկք՝ յարևմըտից ծագեալ:
Իւծեալ մաշեցան հաւատոյ մանկունք,
Գերեալ ցըրուեցան յօտար ազինս ազգաց...
Սըրբութեան խորանքըն հիմնարկեալք 'ի քէն՝
Աւեր ամայի կան խաւարեալ անքնակ.
Ուխտըք օրինաց և կանոնաց սահման՝
Խրամատեալ քակտին, աւրինադրեալքն 'ի քէն.
Րաբունական իմաստից հանճար՝
Նուազեալ պակասին յանբարեաէր բարուց.
Ի կարգս երկնայնոցըն վիճակեալ դասիս՝
Անվարժք յիմաստից այսօր տիրեն հօտից ». և այլն.

և աւարտէ մաղթելով վասն այն ժամու կաթողիկոսին և թագաւորին.

« Յաթոռ տիրական քո ըզնստեալն այսօր՝
Հայցեա առ Յիսուս՝ մեզ լուսատու շնորհել.
Որդւոցս Արամայ՝ զպսակաւորն արքայ՝
Ի Հոգւոյն խնդրեսցես միշտ զօրաւոր պահել »:

Հաւանօրէն Լևոն Բ՝ (1270-89) էր պսակաւորն այն արքայ: — Առ սովաւ և յետոյ ևս հռչակեալ և գերազանցեալ զայլովք երևի Ակներ՝ 'ի վարժս գիտնականս. քանզի առանձնօրէն զսա միայն յիշէ Գր. Անաւարզեցի 'ի թղթին առ Հեթում Բ (1306), թելադրելով նմա՝ կոչել « զԵպիսկոպոսներն և զխորագէտս ?, և զԱկներոյն հայ- » րերն, որ տանին ցուցանեն զայս գիրքս յիւրեանց վա- » ներն՝ պարկեշտ, կատարեալ և խելօք մարդկան »: — Ի նմին ժամանակի (1307) 'ի ժողովի Սսոյ ընդ վանահարսն՝ յիշին Ակներոյ հայրն Սարգիս, և վարդապետն Վարդան: — Յետ սակաւ ամաց (1313) Գրիգոր ոմն սպասաւոր վանացս, որպէս կոչէ զինքն, գրէր անդ զկցուրդս Ս. Եփրեմի, յաւելլով զհակիրճ և զոչ վայրապար յիշատակարանս այս. « Ի սոյն ամի սկիզբն արարաք շինման Բերդիս՝ որ 'ի Քարտիզկնոցն »: Ոչ է յայտ որպիսի ինչ իցէ բերդն, այլ առաւել հետաքննելի էր պատճառ անուան տեղւոյն. Թղթարան արդեօք նշանակէր ըստ սովորական իմաստի քարտէզ բառի թէ այլ ինչ: — Յամի 1325 ընդօրինակելով զմեկնութիւն Թղթոյ ինչ Պօղոսի

յՈսկիբերանէ, նոյն Գրիգոր [1] (որպէս Թուի հաւանու֊
թեամբ), կոչէ զուխտն՝ «վանս գերահռչակ՝ որ կոչի Ա֊
» ռաքելոցն, և այլ բազմահոյլ վկայիցն». և յիշէ զա֊
ռաջնորդ «սուրբ ուխտիս Ակներոյ՝ զծերունի սուրբ վար֊
» դապետն՝ զտէր Վարդան, և զՍտեփաննոս հայրն, և
» զամենայն եղբայրութիւնս». ապա և զիւրսն յիշէ,
զհայրն Վահրամ, և «զչորեսին եղբարսն, զՍտեփաննոս
» քահանայ և զԱնդրէաս կրօնաւոր, և զՍարգիսն և
» զԹորոսն, զյառաջեալսն առ Քրիստոս. և զքեռին
» Սիմէոն երէց, և զորդին իւր զԿոստանդ քահանայ».
և այլն: — Ի միւսում ամի (1326) այլ գրիչ (Նարեկայ ա֊
ղօթամատենին), Յերովբէ անուն որդի Ներսիսի, այն որ
հաւաստեաց մեզ զգաւառ վանացս կոչիլ Ցախուտ, յա֊
ւելու և նոր սրբարան մի 'ի սմա, ասելով. «Ի հռչակա֊
» ւոր սուրբ անապատիս Ակներ կոչեցեալ, ընդ հովա֊
» նեաւ Սուրբ Տիրամօրն և Սրբոյն Յակովբայ, և այլ ա֊
» մենայն Սրբոց»: Ի դատարկ տեղւոջ բլթի միոյ մու֊
ծեալ է բանս այս. «Եւ ես Տիկնաց տիկինս՝ որ փոխե֊
» ցայ յաստեաց 'ի Քրիստոս, ետու գրել զգիրքս՝ յիշա֊
» տակ ինձ և մօրն իմ և կենակցին իմոյ. որ հանդիպիք՝
» յիշման արժանի արարէք և աղօթից պատարագաց»:
Տիկնաց տիկինն՝ Թուի Մարիւն մայր Կոստանդեայ Թա֊
գաւորի, վախճանեալ յամի 1352, որում և վայելուչ էր
դեգերել առ քնարանի առն իւրոյ Պաղտին մարաջախտի:
Սերովբէդ այդ քահանայ յիշի և յամի 1329 'ի վերո֊
յիշեալ գրչէն Գրիգորէ, որ գաղափարելով արդ զՄեկ֊
նութիւն Մատթէի յՈսկիբերանէ, մաղթէ յիշել «զմիա֊
» բան եղբայրութիւն հրեշտակաբնակ ուխտին Ակներոյ.
» զհոգևոր հարքն մեր, զծերունի սուրբ վարդապետն
» զՏէր Վարդան և զպատուելի քահանայքն զՍտեփա֊
» նոս փակակալն (վերոյգրեալքն), և զԳրիգորճ և զԿոս֊
» տանդին (ծերունի) զհեզահոգիսն, և զԹորոս ժառան֊
» կըն, որ 'ի վերայ ամենայն երախտեացն զոր արարեալ
» էին մեզ, յաւելին և զայս, և լցին զփափագ սրտի ի֊
» մոյ, և շնորհեցին զօրինակն՝ որ գրեցի զսա...: Եւ զյիշ֊
» ման արժանին զսուրբ քահանայն՝ զարեամբ նահա֊
» տակն զՎարդանճ, որ բազում տառապանօք էր գրեալ
» զօրինակս, երկս օրինակս մերձ ունելով, և մեզ դիւր
» ճանապարհ էր կազմեալ»: Յիշէ և զայլս բազումս,
որպէս, Յովհաննէս քահանայ և եղբայր նորա «Մարտի֊
» րոս սարկաւագ որ զԹուղթս կոկեաց». հոգևոր հար֊
քըն՝ Գրիգոր միակեց և եղբայրն Մարտիրոս՝ եղբօրորդիք
Սամուէլի քահանայի արեամբ նահատակելոյ. «զորոց,
» ասէ, 'ի մանկութենէ գոհ էի, ևս առաւել այժմ, զի
» զտունս ետուն, որ հանգեայ 'ի գրելս, և յորդորող էին
» միշտ», որպէս և Ստեփաննոս քահանայն. և վասիլ
մանկալաճ, «զի և նա մեզ էր ողորմած». Կարապետ քա֊
հանայն, «որ զծայրս ճառիցն ծաղկազարդեաց». և այլ
քահանայք, Մարտիրոս՝ «որ զգիրքս կազմեաց», Կարա֊
պետ, Յովհաննէս, Յոհաննէս միւս, Դաւիթ, Մինաս, Պե֊
տրոս, Պօղոս: — Յիշեալքդ յայսմ և 'ի նախակարգեալ
յիշատակարանի գրոց՝ Գրիգորեանք՝ յիշին և այլ ևս ամօք
ինչ յետոյ, 'ի 1335. յորոց մին՝ «յառաջ ժամանակաւ
» ետ գրել զքաղաքավարութիւն աստուածաբան աւե֊
» տարանչին Յովհաննու, և զվարս սրբոյ հօրն մերոյ Յո֊
» հաննու Ոսկիբերանի, նա և զծովահանճար մեկնու֊



35. Մաշտոց գրեալ յԱկներ, յամի 1336:

[1] Նոյն յամի 1320 ընդօրինակէ և զՄեկնութիւն առ Տիմոթէոս Թղթոցն Պօղոսի, որ արդ պահի յէջմիածին (Թիւ 1379):

» Թիւն սորա՝ որ զտաան Թղթոցն սրբոյն Պօղոսի. և զաւ» տուածաշունչ Քնարս Դաւթի մարգարէին, Զեռնա» գրութեան գրովն։ Իսկ փակակալն Վարդան և վերա» սացեալն Գրիգոր՝ խնդիր արարին յաղագս գրոյս այ» սորիկ », կանոնաց ինչ մաշտոցի Յունաց, զոր և ստաւնայ յիշեալդ Գրիգոր քահանայ՝ եղբօրորդի Անտոնի կուսակրօն միակեցի։ Իսկ վասն միւսոյ Գրիգորի ասէ, « Ծե» րունւոյ քահանայի, հեզի և իմաստասիրի, որ հայրօրէ» նաբար 'ի մանկական տիոց խնամէ զմեզ աստուածային » բանիւ »։ Զթուական գրչութեան մատենին ցուցէ լուսատիպն (յէջ 155)։ Զմի յերկուց Գրիգորեանցն դարձեալ որոշակի Անարզեցի կոչէ, և 'ի խնդրոյ Նորին ամօք յառաջ (1332) Թարգմանեալ է 'ի յունէ զկանոն վերադարձի յարութենէ՝ 'ի ձեռն Կոստանդեայ երիցու, յԱնդրուշ գիւղ, որպէս ցուցցի սուղ ինչ յետոյ։ — Յետ տասն ամաց այսր յետին յիշատակարանի՝ ճանաչի 'ի պատմութեան ժողովոց՝ Յովհաննէս վանահայր Ակներոյ, որ գտաւ ընդ այլոց գումարելոց առ Մխիթարաւ կաթողիկոսիւ։ Յետ այնր՝ հանգոյն Նախացուցեալ վանորէից՝ և հռչակեալս այս Ակներ՝ բարեկարգութեամբքն, այլ և գրասիրութեամբ, որպէս է խելամուտ 'ի վերջին յիշատակարանացդ :[1], զանխլացեալ ծածկի համօրէն պաշտամամբքն և ընթերցուածովք, տրովքն և սրտիւն Լեւոնի, և հեզամտունչ տոչորմամբ Հեթմոյ։

58. Թէ ոչ կից այլոց եկեղեցեաց մեծի վանացս, այլ և ոչ հեռի 'ի Նոցանէ երևի գոլ՝ և մի 'ի բազմաձոյլ վկայից տեղւոյն՝ 'ի վեր անդր յիշեցելոց, և քաջայաղթ վկայարանն որ կոչի Ձորոյն սուրբ Թորոս, ըստ Նորին յիշողի և բազմագիր Գրիգորի, որ յամի 1329 ընդօրինակէր յայսմ իսկ Ձորի գյիշատակաշատ զայն գիրս Մեկնութեան Մատթէի, որ 'ի ձեռին մերում է արդ, և որոյ այսու ձևով է թուական գրչութեան.

Գրեցաւ ի թուականու
թեն հայոց չհը՛ ի
թագաւորութեանն
լեւոնի աստուածասիրի որդոյ
աւշնի, և կաթողիկոսու
թեանն տեառն յակոբայ,
ընդ հովանեաւ քաջայաղթ
վկայարանիս որ կոչի Ձո
րոյն սբ թորոս: ի ձեռս[illegible]
[illegible]
[illegible]: ամէն:
Ողորմեսցի քս ած կարա
պետ քահանայի նծնողաց
իւրոց որ գծայրս ձեռոյս
ծաղկազարդեաց:

Ոչ լոկ վկայարան՝ այլ և մենաստան ճանաչի՝ յարակից կամ բաժանորդ մեծի ուխտին Ականց. քանզի և առանձինն վանահայր յիշի սորա 'ի ժողովին Սսոյ յամի 1307, Թորոս անուն, փիլիսոփայ մականուանեալ, որ Նշանակէ քաջ երաժիշտ կամ հմուտ երգոց, որպիսի էր և համանուն աւագերէցն արքունի՝ Թորոս Թափրոնց, և այլք ոմանք համանուանք։ Առանց անուան սրբոյն՝ գրի և լոկ Ձորոյ վանք՝ 'ի յիշատակարանի ուրեք 1334 ամի, և 'ի Նմին՝ կենսակիր սուրբ Նշանն վանացն, յայնժամ պահեալ 'ի Սիս։ Յառաջ քան զայսոսիկ՝ յերկրորդ կէս ԺԳ դարու յիշատակի Յովհաննէս Ձորովանեցի՝ երախտաւոր տեղւոյն, ուր Ստեփանոս ոմն գրէր զՅորդորակ ճառս Ոսկիբերանի վասն Յակոբայ կաթողիկոսի Ա. (1268–86). և Յովհաննէս Նշանակէ զինքն ուղղիչ եղեալ գրոցն, իմաստակաց գրչին։

Ոչ հեռի 'ի սահմանաց կամ 'ի շրջանակէ Ակներոյ կարծեմ և զԹիւրքթի վանս. մի՝ զի գրիչ վերայիշեալ յունական մաշտոցին՝ ասէ վասն այնորիկ, « Քրիստոս » Աստուած մեր տացէ բարի ժամանակաւ վայելել զգիրս » բնակչաց սուրբ ուխտին Թիւրքթոյ վանիցն, յորոյ պաշ» ծառութիւն՝ բարի յիշատակս կատարեցաւ. այլ մի՛ ոք » իշխեսցէ հանել զսա յեկեղեցւոյն, յինչ պէտս և իցէ ». և երկրորդ, զի ոմանք յանձանց յիշեցելոց յԱկներ՝ յամս 1313–1329, յիշատակին և համազոյգ 'ի գիրս Անդրիանտական ճառից Ս. Ոսկիբերանի՝ գրելոց 'ի վանս յայս Թիւրքթոյ, յամի 1314. Վասիլն այն մառնպան, հոգևոր հարքն Գրիգոր և Յովհաննէս, և գրիչն Կոստանդին, որ յիշէ և Նոր անձինս, որպէս զՍիր Թորոս հարազատ եղբայր երկոցուն դոցա. բայց զմին՝ զԳրիգոր՝ առաջնորդ ասէ այսր ուխտի Թիւրքթոյ, և զմիւսն (Յովհաննէս) փակակալ, որք ետուն գրել Կոստանդեայ զայն մատեան. և 'ի գործաւորաց՝ բաց 'ի մառնպանէն Վասլէ՝ յիշէ « ըզ» Յովհաննէս ածպան (այծապան), զԹորոս հացկատր, » զԱնտոն աղօրեպան, զԿոստանդին հիւրատես »։ Սրբաբանքն յիշեալք են Ս. Աստուածածին, Ս. Փրկիչ, և կենսակիր սուրբ Նշանն։ Գրիգոր առաջնորդ վանիցս գտաւ ընդ ժողովելսն 'ի Սիս յամի 1310. իսկ 'ի ժողովին Ադանայ յամի 1316՝ վանահայր Թիւրքթոյ էր Հայրապետ։ Այլ ինչ յիշատակ ոչ գտանեմ զտեղւոյս։

Յաւելից աստանօր և զաւանդութիւն հրաշախառն բերդի միոյ, զոր աւանդող բանին՝ ասէ մերձ լինել 'ի Pharsipee, Բարձրբերդ. էր անդ, ասէ, ցին (հաւ) մի 'ի վերայ գեղեցիկ Թառի, զոր պահէր ոմն յաւերժահարսն գեղանի. և որ ոք հսկէր անսխալ և կայր 'ի պահ հաւուն զաւուրս եօթն կամ երեք, շնորհէր Նմա բամբիշն ըստ սրտի Նորա բարիս երկրաւորս՝ որում և բաղձայրն. իսկ թէ ոք վրիպէր 'ի պահուն՝ և 'ի քուն մտանէր, զանձն իսկ կորուսանէր և անյայտ լինէր։ Հսկեալ ազգատի ուրուք երբեմն զգուշութեամբ զսահմանեալ աւուրսն՝ խնդրեաց ընչաւէտութիւն, և տուան Նմա այնքան ինչք շահու վաճառականութեամբ՝ մինչև հազիւ բաւէր համարել զչորրորդ մասնն։ Այսպէս ոմն Տաճարական նոյնպէս

1 Յիշէին և 'ի ցուցակի Ձեռագրաց Էջմիածնի այլ և այլ մասունք գրեալք յԱկներ, յորս և Ագաթանգեղոս մի հնաձև (Թիւ 1614)։

ժրաբար հսկեալ՝ մատոյց քսակ մի՝ լնուլ ոսկւով. եւ լից բամբիշն և ետ, այլ գուշակեաց զի չարի լիցի առիթ այնքան լիութիւն գանձու՝ և նմա և կարգին իւրոյ, որպէս և եղև իսկ: Եկեալ և միոյ 'ի թագաւորացն Հայոց (Ermeny) առն լաւի և քաջ ձիաւորի, 'ի կատարել աւուրց հսկմանն՝ հարցեալ թէ զինչ խնդրիցէ, ասէ. Զեմ մեծութեանց ինչ կարօտ, զի են իմ կարի իսկ շատ, և երկիր ունիմ ընդարձակ և կեամ յանդորրու, և ոչ իմիք այլոյ ցանկամ՝ բայց քում անձին: Խոժոռեալ բամբիշանն ասէ. Անմտութեամբ խնդրեցեր զոր չէ մարթ քեզ ընդունել. քանզի իմ խոստումն է տալ բարիս երկրաւորս, իսկ ես չեմ երկրաւոր ոք, այլ երկնաւոր և հոգեղէն: Եւ 'ի յամառել թագաւորին 'ի կամս իւր, սպառնայ բամբիշն և ասէ. Որովհետև չեղէ բաւական փոխել զքեզ 'ի յանդուգն և 'ի վայրապար բաղձանացդ, տաց զոր ոչն փափագիս՝ քեզ, և որ 'ի քէն գալոց են զարմք՝ ցազգ իններորդ. արդ գիտասջիր, արքայ, զի մարդք անդադարելիք պաշարեսցեն զքեզ, և եղիցիք կոխան թշնամեաց ձերոց և կարօտք ամենայն բարեաց: Եւ յաւելեալ, ասէ պատմիչն պարզամիտ, թագաւորն Հայոց և երկիր նորա կորուսին զխաղաղութիւն և զմեծութիւն, և անկան ընդ հարկաւ Սառակինոսաց: — Հեղինակ և հաւատացող բանիցս է Յովհան Մոնտըվիլ (Maundeville) ուղևոր և ուղեգիր անգղիացի յառաջին կէս ԺԴ դարու, որ յերկար շրջեալ յուխտս և յաշխարհս հեռաւորս՝ մինչև 'ի Թաթարս, գրեաց զոր ետեսն և զոր ոչն ետես, և շատ ինչ 'ի լրոյ և ըստ զրուցաց. և 'ի ստորագրելն զճանապարհ իւր 'ի Տրապիզոնէ 'ի Կարին, խոտորեալ զըրշութեամբ յայս կողմն՝ զրուցէ զայսոսիկ, և յաւելու նովին միամտութեամբ, թէ Զէ այս ուղղոյ ճանապարհ երթալոյ 'ի նախ նշանակեալ տեղիսն, այլ առ 'ի տեսանելոյ զսքանչելիս զայս. և ըստ բանիցն՝ 'ի դէպ է անուանել զբերդն Ցինաբերդ կամ Բազէբերդ, Sparrow-hawk յանգղիացի գրութեան:

56. ԿՈՊԻՏԱՌԱ. — Ըստ դասաւորութեան բերդորէից յարքունական Պատմչէն՝ ընդ մէջ Բարձրբերդոյ և Մոլեւոնի կարգի Կոպիտառոյ բերդն, որ և միշտ այսպէս 'ի հոլովականն գրեալ, և ո տառիւ հաւեալ, ոչ գիտեմ թէ յուղղականն կոչէր և Կոպիտառ. զի առ առաջին յիշատակողի սորին՝ Մատթէի Ուռհայեցւոյ՝ գտանի ա տառիւ. «Կոստանդին որդի Ռուբինայ, որ ունէր զՏօրոս լեառն 'ի յաշխարհին Կոպիտառայ՝ 'ի Մարապայ», և այլն: Պատմիչդ փոխանակ բերդի լոկոյ առաջի առնէ մեզ յայդ անուն աշխարհ, և 'ի նմա գաւառ զՄարապա կամ Մարպա. նոյն և այլուր սահմանորդ ցուցանէ զդա Անաւարզայի. «Յայսմ ամի սոէ, որ է 1110, զօրաժողով արարին զօրքն Թուրքաց և մտին յաշխարհն Անաւարզայ, և աւար արարին զամենայն երկիրն և զՄարպայ». զնոյն բան և մերս Պատմիչ այսպէս զատուցանէ. «Մտին յաշխարհն Անարզաբոյ, և կոտորեցին ըզքրիստոնեայս գաւառին Մարպայոյ»: Արդ ըստ առաջնոյն՝ գոգցիր նոյն իսկ են Կոպիտառա և Անարզաբա աշխարհ. իսկ Մարպա կամ Մարապա՝ ըստ երկոցուն ես՝ գաւառ մի Անարզաբոյ. ապա 'ի դէպ է ասել, եթէ 'ի ԺԱ դարու և 'ի սկիզբն իշխանութեան Ռուբինեանց՝ ընդարձակ նահանգք և սահմանորդք էին սոքա, Անաւարզա՝ յարևելից, Կոպիտառա՝ յարևմտից հիւսիսոյ. և սմա նախ տիրեաց Կոստանդին որդին Ռուբենի. իսկ նախահայրս այս հարստութեանն՝ ոչ զայս բերդ, այլ զայլ՝ գրեաթէ զհամանուն՝ միով տառիւ զանազանեալ՝ նուաճեալ ունէր, զԿոսիտառայ կամ Կաւսիտառայ բերդն. և հարկ է թէ որիշ տեղիք էին, զի ամենայն յիշողք կալուածոց Ռուբինի՝ Կոսիտառայ բերդ գրեն, ընդ որս և Վահրամ,

«Ռուբէն անուն ձայնեալ,
Զկոսիտառա ամրոց կալեալ».

և զի ըստ ցուցակութեան բանից նոցին՝ արտաքոյ Կիլիկիոյ՝ 'ի հիւսիսակողմանն և 'ի սահմանս Փռիւգիոյ էր այն: Ցիշի և Կոսիտառայի խալ: Դարձեալ, Կոպիտառն սուղ վանկիւ գրի (ո), միւսն՝ յաճախ երկբարբառիւ (աւ), (Կաւսիտառայ): Թողեալ արդ զաս 'ի զննել և հեռագոյն կողմանս Փռիւգացւոց, մատիցուք 'ի զրաւոր յիշատակս Կոպիտառայի, զի և սորա դիրք և այժմեան Մնացորդք՝ անյայտ են առ 'ի մէնջ. այլ ըստ նախագրելոյ նշանակի՝ ընդմիջասահման երևի Բարձրբերդոյ և Մոլեւոնի, այլ և հաւասար 'ի Գահս Կիլիկիոյ, հիւսիսագոյն քան զնոսա. զի մի 'ի նախագրաւ կալուածոց Ռուբինեանց է, որք 'ի հիւսիսոյ ընդ հարաւ խաղացին աշխարհակալութեամբ. և իտալացի վաճառագիրն Բեկոլոդդի զսահմանս Հայոց ձգէ յԱյասոյ մինչև 'ի Կոպիտառա. թէպէտ և նոյն ինքն 'ի ճանապարհագրութեան անդ իջևանաց Կարաւանին՝ անընդմէջ կարգէ զերկոսին հանգոյցս՝ զԱյաս և զԿոպիտառա, 'ի ձեռագրի նորին գրեալ կամ ընթերցեալ Colidara: Յայտ է դարձեալ 'ի յիշատակէդ՝ զի մի 'ի հին յունական կամ նախնի Կիլիկեան բերդորայիցն էր դա, մեծ և ամուր և 'ի դժուարամատոյց վայրի, յոր սակս և անաղարտ մնացեալ ցվախճան պայազատութեան մերայոցս և անդր ևս. զուցէ և արդ ոչ իսպառ խանգարեալ: Զկարևոր շնորհս սորա յայտ առնէ և աշխարհագիրն Վարդան, որ բազում բերդըս ասելով լինել 'ի Կիլիկիա, յիշէ միայն «զբերդն Կոպիտառոյ և զԲարձրբերդ մօտ 'ի Մոնլևոն»: — Առաջին յիշատակ տեղւոյս յետ Կոստանդեայ Ա տէրութեանն, իբրև դարու միով յետոյ լինի, և դժխեմ դիպաց. այն է՝ արգելմամբն 'ի նմին մանկահասակ կաթողիկոսին Գրիգորի Ե, որ զի անլուր աւագաց և անխմաստութեամբ վարէր, ամբաստանեցաւ առ Լևոն՝ մինչ չև էր սորա թագ կապեալ. և հրամանաւ նորին երթեալ Յովհաննու եպիսկոպոսի Սսոյ՝ 'ի Հռոմկլայն, կալաւ խաբէութեամբ, եբեր և եմոյծ 'ի բերդս յայս (1194). որ և նշանակի յայսմ պատմութեան՝ լինել 'ի քարաժեռի, և Քարն Կոպիտառայ կոչի յՈւռպելեանէ. ուստի հրապուրեալ 'ի հաւատարմաց իւրոց Հռոմկլայեցեաց՝ հնարել ելս, զի երիվար մատուցեալ զերծուսցեն զնա. «որոյ անկեալ 'ի բանս նոցա՝ մանկաբար, և առեալ կտաւ կախեցաւ 'ի գիշերի՝ իջանել 'ի բերդէն. և կտաւուն անկն բեկեալ պատառեցաւ. և անկեալ 'ի խոնարհ բարձաւ մեռեալ». վասն այնորիկ և կոչեցաւ Քարավէժ: Ժամանակակից ոք յիշատակագիր՝ 'ի պատմելն հա-

մառօտիւ զայս դէպս՝ Դղեակ Կոպիտառու կոչէ։ — Կոստանդին ոմն էր իշխան բերդին յայնմ ժամանակի, զի յիշի յետ սակաւ ամաց 'ի Թագաւորութեան Լեւոնի. որոյ յաջորդք անծանօթ են ինձ մինչեւ 'ի սկիզբն ԺԴ դարու, յորում 'ի ժողովի Սսոյ (1307) տէր բերդին հանդիսանայ Օշին։ — Ոչ միայն իշխանանիստ, այլ եւ եպիսկոպոսանիստ էր Կոպիտառայ բերդն կամ սահմանն, զի հաւանօրէն 'ի վանս ուրեք վիճակին նստէր եպիսկոպոսն, այլ ոչ յիշի բնաւ ոչ վանք եւ ոչ այլ չէն 'ի նմին. մի միայն եպիսկոպոս ճանաչի, յիշեալն 'ի ժողովիդ՝ Սիմէոն անուն։ Իսկ բերդին յիշատակ անցանէ այսր եւս քան զկէս ԺԵ դարու. զի յաւերել Շահսուարայ զՍիս՝ յամի 1467, մի ոմն 'ի բնակչացն գրէ, « Եւ մեք եկաք » 'ի Կոպիտառայ բերդն » ։ — Ընդ երկբայութեամբ յիշեցից աստանօր ըստ պարգեւագրի որ յանուն Լեւոնի Գ յամի 1307, 'ի կարգի քաղաքաց Կիլիկիոյ յետ Սսոյ, Մսսայ, Ատանայ եւ Տարսոնի հուսկ կարգեալ եւ զԿապեստրան, Capestran, ըստ իտալական հին պատճենի. եւ զի յայս անուն քաղաք կամ տեղի ոչ յիշի այլ ուրեք, գուցէ Կոպիտառ է սխալագրեալ, որ եւ 'ի մերոյ իսկ ազգայնոյ գտանի ուրեք Թիւր գրեալ Կոճիտառոյ բերդ։

## ՄԻՋԱԳԵՏՔ ՍԱՐՈՍԻ

---

### ՋՈՐԱՀՈՎԻՏՔ ՋԱՄԱՆԴԵԱՑ ԵՒ ՍԱՌԱՆԻ

37. Միջին մասն հիւսիսակողման Կիլիկիոյ, կամ որ ինչ յարեւելս հիւսիսոյ է դեռ եւս տեղագրելոյ գաւառին Բարձրբերդոյ, եւ յարեւմուտս Նահանգին Ջահանայ, միջոցն այն հիւսիսագոյն Տաւրոսի (Ալա-տաղ լերանց) եւ Անտիտաւրոսի, մթագոյն մնայ եւ 'ի պատմական եւ յաշխարհագրական ծանօթութիւնս. զի չէ յայտ ցօր վայր ձգէր ձեռն իշխանութեան Լեւոնեանց յայս կողմանս, եւ յորում մասին լերանցն էին առաջին կալուածք Նախահարց Ռուբինեանց, մանաւանդ Նորին իսկ Ռուբինի. քանզի համարիմ աստանօր զնախ նուաճեալն 'ի նմանէ՝ զԿօսիտառ եւ զԿոռոմոզոլ կամ Կորմոզոլա. յորոց յառաջ անցեալ Կոստանդին որդի Ռուբինի՝ եկն 'ի Վահկայ՝ 'ի ծանօթն վայր, 'ի վերջին հիւսիսային ծագս Կիլիկիոյ. զոր եւ համարին պատմիչք մեր սկիզբն իշխանութեան Հայոց յաշխարհիս Սիսուանայ։ — Արդ թողեալ առ յապայն զխնդիր Թատեր գործոց Նահապետի կիլիկեան պայազատաց Հայոց, նշանակեսցուք զսակաւ ինչ ծանօթութիւնս զսահմանացս յիշեցելոց. այն է՝ հարաւային մասն զուգակից առաջից Սարոս (Սիհուն) գետոյ. որք 'ի հեռաւոր ծագաց հիւսիսակողմանց Կապպադովկիոյ՝ իջանեն զուգահեռական իմն ընթացիւք, սակաւ բացակայութեամբ յիրերաց, (առ առաւելն քսան մղոն, եւ բազում ուրեք հնգետասան կամ նուազ եւս), անջրպետեալք 'ի պարուց լերանց, այլ ոչ անընդհատ յարակցաց, որք եւ սկիզբն են Անտիտաւրեան մեծի լեռնագօտւոյ։ Ջանազան անուանք են լերանցն՝ 'ի հարաւոյ կուսէ ընդ հիւսիս ձգելոց, սուղ ինչ ընդ արեւելս խոտորելով. հարաւագոյն լեառնն կոչի Կետիմ պէլի?, իսկ գլխաւոր եւ միջին մասն՝ յանուն հզօր տոհմին Թուրքաց կամ Աֆշարաց՝ Քօզան, Քուզան եւ կամ Գուզուն տաղ, եւս եւ Խօզան, որով ոմանք համարին արդ կոչել զբովանդակ հինն Անտիտաւրոս. բայց մեծ Թւ մի լերանց Քէրմէզ կոչմամբ, յորում կատարք 10,000′ բարձունք, ընդմիջելով զերկայնաձիգ պարն՝ ձգի ընդ արեւելս 'ի հովիտ Ջահանայ։ Ի հիւսիսոյ Քօզանայ մի ըստ միոջէ փորաձորովք զատուցեալք ձգեալ կան՝ Սան տաղ, Պէյ տաղ, Գզըլ տաղ. — երկոցուն յետնոցս Թամբ անցից 1808 Ք. բարձր է, ըստ Չիհաչէֆի, որ յանցանելն ընդ այն յ'13 յուլիսի (1848 ամի) ձիւնացեալ տեսանէր զհարաւային կատար լերինն, յորում եգիտ եւ բրածոյ ժժմակս. — Քեսդէլ? տաղ, Տէտէ տաղ, Գարապունար պէլի, Սօղան տաղ, եւ այլք, որք ձգին ընդ արեւելս կոյս Կեսարիոյ։ Ի միջակողման պարուն՝ Թւ մի եւս զուգահեռական ձգի՝ Գարրան տաղ անուանեալ, եւ յերկուցն միջի անձուկ ձորահովիտ է Սչէուս գետակի՝ օժանդակի արեւելեան առաջից գետոյն։ Մեծագոյն եւս պար զուգահեռական սոցին՝ ձգի յարեւելից կուսէ, այն է յահեկէ արեւելեան առաջիցն կամ բնիկ Սարոս գետոյ, յորում երկայնախօտըն Պինպօա կամ Պինպուղա լեառն, 'ի հարաւոյ մօտից ունելով զՄասէն տաղ, իբրեւ ընդ երեսունեհինգ մղոն ընդ երկայնութիւն. եւ երկոքին եւս պարքն միանգամայն գործեն զԱնտիտաւրոս՝ տարածեալ գրեաթէ ցԱփսու գետ, ընդ մէջ աշխարհաց Բ եւ Գ Հայոց։

Արեւմտեան առաջք Սարոսի՝ կարճագոյն քան զարեւելեանն՝ կոչի Ջամանդի (Ծամնդաւ), եւ բղխէ 'ի Գաղէ տաղ լեռնէ 'ի Հս. Եւ. Կեսարիոյ, 'ի հովտին Թուրուն կամ Գուրունա օվասի, իբրեւ յ'2,000 Ք. բարձուէ. եւ ընթացեալ ընդ խորաձորս յոյժ երագասահ, ընդ Հր. Հր. Մ., ժամանեալ 'ի ծայր Ալա-տաղ լերանց՝ առ Ֆառաշաւանաւ, եւ յառաջ անցեալ ընդունի զգետակն իջեալ 'ի Նոցունց, որոց գլխաւորք՝ Նախածանօթքն Գօրգուն եւ Զագըտ. եւ ապա դարձեալ յարեւելս՝ մտանէ 'ի դաշտ, եւ ընդ մէջ սահմանաց Սսոյ եւ Ատանայ՝ խառնի ընդ արեւելեան առաջն։ Արեւելեանս այս գլխաւոր առաջք Սարոսի՝ Սառան սու կամ Սարիս կոչի, եւ երկարագոյն է. զի 'ի Հս. Ե. Ջամանդեայ բղխէ՝ 'ի ստորոտից Խանզիր տաղ լերին, իւր քսան մղոնաւ 'ի հարաւոյ խաղից Ալիսեայ, 'ի Զըրալըգ անուանեալ տեղւոջէ, եւ հոսեալ ընդ անձուկ միջոց երկոցուն Թեւոց Անտիտաւրեան լերանց, խաղոյ ընդ Հր. Հր. Մ., կտրէ զոստս Քէրմէզ լերին, եւ հուն բանայ ընդ հարաւակողմն Հաճնոյ, ընդունելով անդանօր յաջմէն զՍչէուս գետակն կամ Քիւյիւկ սու, օժանդակաւ նորին Ուզունմու վտակաւ, եւ այլովք եւս, որոց ձորակք կոչին Իճ-Տէրէսի, եւ Ճիմարքուր? (Dschimarkoure). ապա 'ի հիւսիսոյ սոցին ընդունի զՀաճնոյ ջուրն՝ որ եւ Զարալ-կէօզ, եւ մտեալ 'ի դաշտ՝ կոչի այնուհետեւ Սիհուն. անցանէ ոչ շատ հեռի յարեւմտից Սսոյ, եւ ապա խառնեալ ընդ Ջամանդեայ՝ նովին ուղղութեամբ ընթացից, Հր. Հր. Մ., կտրէ զբովանդակ դաշտն Կիլի-

կնոյ, և սակաւուք 'ի բացեայ յեկից կուսէ գետաբերանոյ Կիւղնոսի՝ Թափի 'ի ծով. երկարագոյն գոլով քան զամենայն գետս Կիլիկիոյ, իբր երկու հարիւր երեսուն մղոն. այլ առաջին կէսն արտաքոյ է սորին։

Մինչև ցոր վայր ձորոց զուգաթև գետոյս Սարոսի՝ բովանդակէր իշխանութիւն Ռուբինեանց, և որում գաւառի սեփական էին վայրքս, ոչ գիտեմ. կարծեմ Բարձրբերդոյ, գէթ հարաւակողմանցն։ Այսպէս ըստ կարծ համարելով մինչև ցՃաճին ձգել զսահմանսն ընդ հիւսիսի, որ է ըստ այժմու աշխարհագրական քարտից ընդ 38° լայնութեամբ, նկատեսցուք ուրոյն զերկաքանչիւր գետառաջիցն հովիտս, ընդդէմ ընթացից նոցին խաղալով, 'ի հարաւոյ 'ի հիւսիս. և նախ զարևմտայնոյն՝ որ է Ջամանդի, զորոյ տեսաք անձկագոյն լինել զհովիտն, վասն որոյ և սակաւ չէնք նշանակեալք 'ի նմին, ըստ Թերակատար քննութեան վայրացն։

Արդ յահեկէ գետոյս այսորիկ (Ջամանդի) և յարևմտից Կէտիմ պէլի լերին, ուր արօտք Սարգանդ օղլու Աֆշարաց, են տեղիք, Թախթա քէօփրիւ, Թերևս կամուրջ ունելով փայտեայ 'ի վերայ վտակի միոյ փոքու՝ որ անկանի 'ի Ջամանդի, զի մերձ կայ նմին և 'ի վերայ ճանապարհի, Թէ և անընդմէջ 'ի վերայ ջրոյն նշանակի այլ գեօղ Իմրի? անուն. առ որով վերագոյն ևս՝ են Մաւէրլի և Գարա քէօյ։ Աստի 'ի բնիկ ձորահովտի Ջամանդեայ մինչև 'ի Ֆառաշ աւան՝ նշանակին գեօղք, Գալէ-քէօյ-Շէյխլի, յայտարար բերդի. Պաղչէճիկ, Թիփի տէրէսի, Եէնի քէօյ, Աֆշար քէօյ՝ որ և գլխաւոր գեօղից կամ հանգրուանաց Աֆշար տոհմի. (քանզի և յՕսմանեան վիճակագրութեան՝ մի 'ի մանունց դէհից կողմանցս գրի Աշիրէթի-Աֆշար). Կիլիփօշ? — տէրէսի, Վերին և Ստորին Պէքեարի (զուցէ Պագըր), առ որով փայտեայ կամուրջ. Գարա քէօյ միւս. առ սովաւ ոչ միայն փշատենիս, և յակրիս (Rhamnus petiolaris), այլ և այգիս խաղողոյ եսես Չիհաչէֆ (26 յուլիս, 1853). ուր և գլխաւորն Սարգանըը Աֆշարաց



36. Շահոզրամ փոփոխուն. Dianthus mutabilis. (Տես յէջ 160)։

հիւրընկալեալ զնա՝ ետ և գիր ընծայութեան առ ցեղապետ իւրեանց և գլխաւորն Քօզանեանց՝ Ջաւըրճի Մէհէմմէտ Պէյ։

Յաջմէ գետոյն նշանակի միայն Ֆառաշ աւան, գլխաւոր չէն համանուն վիճակի, իբր յ'3300' բարձու, 250 տնակօք, 'ի խոժոռագեղ ձորավայրի. ուր նստի և միւտիր. յոլովագոյն մասն բնակչացն Յոյնք են խրթնաբարոյք, ըստ գրացեաց իւրեանց Աֆշարաց, յորոց չեգիտ յօժար ընդունելութիւն Չիհաչէֆ, որ երկիցս հանդիպեցաւ և ագաւ աստ, (25 սեպ. 1848, և 23 յուլ. 1853)։ Ազգաբնակութիւնդ յայտ առնէ լինել անդ մետաղից, և են իսկ երկաթահանք. Յոյնքդ Ֆառասոնի կոչեն զաւանն կամ զինքեանս (Φαρασόνη), այլ 'ի գիրս նոցին կոչի Ֆարասսա (τὰ Φάρασσα), իբրև յանուն եկեղեցւոյ իւրեանց՝ նուիրելոյ սրբոց վկայիցն Բրիչ-յեսու և Յովհաննու եղբարց՝ նահատակելոց 'ի Պարսս, 'ի սկզբան հալածանաց Շապհոյ ('ի 24 կամ 'ի 29 դեկտ. 327 ամի), որոց տօն կատարի 'ի 29 մարտի. ընդ սոսա նահատակեցան և այլ

*ոչ նշանակի չէն տեղի. այլ միայն իբրև վեց մղոնաւ 'ի հիւսիսոյ Պէրէքէթլեայ՝ աւերակքն Քէչի գալէսի (Այծից բերդ), փափաքելի 'ի քննութիւն:*

47. ՁՈՐԱՓՈՐ ԼՕՃԷՄԻՇԻ. — *Սուղ ինչ 'ի ստորև խառնրդոց փոքու վտակին՝ առ որով Ճէլալար և Պուրճ, խառնուրդք լինին վերոյիշեալ Լօճէմիշի ընդ Գորգունի. և անդէն սկսանի անձուկ ուղին՝ զոր ասացաք ձգիլ գնալ ընդ Հս. Եւ. 'ի կողմն Կեսարիոյ, յարևմտից կամ յաջմէ գետոյն. առ որով նախ ջրաղաց մի հանդիպի, մղոնաւ բացագոյն 'ի գետակցութենէն. և նոյնչափ վերագոյն իջեվանն Պաժ-տէրպէնտ խան, որ միանգամայն յայտ առնէ զանձկութիւն կապանին և զբաժտուն հաստատեալ անդ. որոյ պաշտօնեայք կապալառուք՝ Հայք էին յանցանելն ընդ այն Փոչեայ՝ յերրորդում ուղևորութեանն՝ յամի 1859, որ և գիշերօթեաց առ վայրօքն (3-4 յունիսի), ընդ մէջ մաքսատանն և որմնապատ կամրջի միոյ, ուրանօր ժողովեալ էին վրանաբնակ անցորդք վասն հատուցման բաժին: — Կիսաժամաւ անդր քան զկամուրջն՝ չորք են արդեւսեան բլրոց, յորոց սեւահող լեպրակս եւեւս բուսաքնինն սպիտակածիլ Տերեփուկս* (Centaurea eriphylla), *Կորնգան լեւղացի, և Առուոյտ վայրի* (Onobrychis): *Աւելի քան զ 4200′ բարձր է տեղի կամրջի բաժտանն. բայց է միւս ևս կամուրջ երեք ժամաւ 'ի ստորև՝ Պաժ մաղէն խան Տէրվիշլի կոչեցեալ, 'ի բարձու 3850′ 'ի վերայ Լօճէմիշի, զոր Կիւմիւշլիւ սու կոչէ անդ՝ Փոչլի: Իբր հինգ մղոնաւ վերագոյն քան զբաժտունն՝ է միւս իջեվան Գայա-աչրը խան, որ տայ կարծիս քարաժայռ սարաւանդեալ 'ի վերայ իւր ունել. ընդ մէջ սորա և Պէրէքէթլիի՝ նշանակի աղբիւր մի, որպէս և 'ի հիւսիսոյ իջեվանին՝ 'ի վերայ ճանապարհին՝ այլ աղբիւր, և այլք ևս վերագոյն սուղ ինչ հեռի 'ի ճանապարհէն յահեկէ գետոյն. ուր սակաւուք ևս 'ի վերոյ քան զնոսին՝ է Պայաճ-տէրէսի գեօղ մեծ 'ի ձորակի միում. յորմէ երիւք մղոնաւ վերագոյն 'ի Մ. հիւսիսոյ առ գետեզերբն՝ Լէյնէրլի գիւղ. և սակաւուք ևս վերագոյն՝ Պաղէմ քէօյ: Աստի և անդր ընդ Հս. Մ. սահմանք են Նիկտէ գաւառի նահանգին Գարամանայ, անջրպետեալ յ'իւչ գափու լերանց: — Յելից հարաւոյ Պայան ձորակի անցանէ լեռնուղին որ 'ի Պէրէքէթլեայ տանի 'ի կապարահատսն, ձգելով ընդ մէջ ձորոյն Լօճէմիչի և գօտւոյ Ապիչքար լերին, և է անձուկ մի ուղւոյն Պօղազ-մաղէն կոչեցելոյ, 'ի 1400 Ջ. բարձու, ուղիղ գծաւ իբրու չորս մղոն յելից յիշեալ գեղջն. անտուստ ճանապարհն ուղղի ընդ հիւսիս՝ նոյնքան ևս մղոնաչափ, և հասանէ յարևմտեան հիւսիսային ստորոտս Ապիչքարի. անդ են կապարահանքն Էսկի-մաղէն 'ի 1970 Ջ. բարձրատափի, 'ի կապուտակ կրային գետնի. ուր յերկու մղոնաչափ տարածութեան յայտնեալ են երակք կապարոյ, հօրիզոնական խաւօք 'ի վերայ տափին, այլ 'ի կողմն առ 'ի չեղ դրիւք, ունելով մէն 0,20 մինչև 0,50 Ջ. թանձրութեան. հինգ փորակք բացեալ են 'ի պեղումն. ուր՝ զի վասն բարձրութեան տեղւոյն հազիւ երիս կամ չորս ամիս միայն մարթ է վաստակել, սակաւ է և շահն. այլ մարթ էր բանալ և գուբս 'ի կողաց, և առատագոյն արտաբերել: Մետաղն նման է հանից Պուլղար տաղի, նուաղագոյն ևս ունելով արծաթ, այլ ճոխագոյն կապար. ամի ամի ընծայեն կապարահանքս 40 կամ 50,000 օխա (51-64,000 հազարգրամ):*

*Ոչ կարի հեռի 'ի կապարահանից աստի, 'ի հարաւոյ նորին իբր ութ մղոնաւ ուղիղ գծով, յելից Ապիչքարի և յելից հիւսիսոյ Էմիրկ լերին՝ են այլ մետաղք Փօզ կամ փօզ-մաղէն կոչեցեալ, ոչ քաջ քննեալք և գործեալք. այլ որչափ ինչ յայտ է՝ երկաթ է նիւթն, և պղինձ իսկ, որ 'ի սակաւ ինչ փորձոյ՝ գտաւ* 5 %: *Ի փայտեայ կամրջէն ձգի այսր ճանապարհն, անցանելով ընդ մէջ ձորեզեր Գօրգունի և Գարէնֆիլ և Մէսմէնէ լերանց, քերելով զարևելեայ ստորոտովք բարձանց Ալա տաղի:*

*Ի թողուլ մեր արդ զհովիտս արևմտեայ օժանդակաց Սարոսի, հարկ էր գիտել և զտեղի կցորդութեան նոցին ընդ միմեանս և ընդ բուն գետոյն. 'ի բազմաց անծանօթ մնացեալ բերան Գօրգունի կամ խառնուրդն՝ հաւանելի է լինել ընդ Ջագըտայ, որպէս և արդ յետին քննիչք կողմանցն՝ Ֆավր և Մանտրոյ նշանակեն, բայց զանունն Քիւչիւկ սու գրեն. և այս յետ անցիցն ընդ մէջ Գզըլ տաղ և Գարէնֆիլ լերանց և մխելոյ 'ի դաշտակողմն, յանուանեալն Ինճ տէրէսի (Անձաւաձոր). ընդ որ ընթացեալ ոչ բազում ինչ միջոց՝ անկանի յարևմտեան մեծ առաջն Սարոսի, որ է Զամանդի: Ի վերոյ քան զկցուածն ընդ Ջագըտայ՝ նշանակի 'ի ձախակողմեան եզեր զուգակցին՝ համանուն նորին գիւղ Գօրգուն, որոյ հարկ է չափաւոր բարգաւաճ տեղի լինել, զի ընծայէ ջրոյն զիւր կոչումն. այլ ոչ գտանեմ յիշատակ առ ճանապարհագիրս. 'ի գրոց մերձաւոր անուն լսի Հարգան, իբրև թեմ եպիսկոպոսական յիշեալ 'ի սկիզբն ԺԴ դարու. թէպէտ և Զամչեան պատմահայր մեր համարի զայն լինել այժմեանս Հաճին, ոչ գիտեմ դարձեալ՝ ըստ ձայնին գուշակեալ՝ եթէ յայլմէ տուչութենէ:*

48. ՍԱՀՄԱՆՔ ԱԼԱ-ՏԱՂ ԼԵՐԱՆՑ: — *Միջին պար կիլիկեան լերանց ծանեաք 'ի բնագրութեանս զանուանեալն Ալա-տաղ (իբրև մեծ կամ գունագոյն ծաղկերանգ), և ըստ ոմանց Ալլահ-տաղ, որ 'ի Հր. Մ. ձգի ընդ Հս. Եւ. անընդհատ և իբրու միապաղաղ պարիսպ և անջրպետ՝ ընդ արևմտեան օժանդակս Սարոսի, ցքառասուն մղոն. իսկ ընդ լայնն՝ հասարակօրէն հինգ կամ վեց մղոնաչափ. այլ Հս. Եւ. կողմն լայնանիստ է կրկին քան զմէջն, մինչ Հր. Մտ. անձկագոյն ևս քան զհասարակն: Բայց են և կողմնական թևք լերանց, մանաւանդ յարևելից կուսէ, որք խափանեն 'ի մօտոյ կշռել զբարձրութիւն բնիկ պարուն, ('ի հեռուստ՝ 'ի ծածկել կողմնականացն՝ վեհագոյն յոյժ երևեալք), և դարաձև խոնարհին 'ի կողմն Զամանդեայ: Ըստ ականկշռելոյ՝ ոմանք 'ի տեսողաց հաւասար ասեն Պուլղար լերանց, և այլք սուղ ինչ նուազ, բայց զԱպիչքար սրակատար՝ որ 'ի Հս. Եւ. ծայրս պարուն՝ հաւասար համարին բարձրագոյն կատարաց համօրէն Տաւրոսի, 11,000′: Արդ՝ այսու իսկ կարծեօք յայտ լինի՝ զի յոյժ անծանօթ մնան լերինքս և սահմանք նոցին՝ քան զհարաւային արևմտեան պարակիցսն, որ են բնիկ Կիլիկեան Գահք. և մնայ մեզ և որ զհետ մեր՝ սպասել յաջողակ քննողաց, և ակն ունել նման առաջնոցն և 'ի սոսին՝ գիւտս բնական բերոց, պէսպէս բուսոց և մետաղոց, և կարևոր ևս ծանօթութեան դրից հովտաց և ձո-*

րոց, և որ 'ի նոսին ջուրցն հոսանաց երկուստեք։ Ծանօթ բուսախնդիրն Պուլղարեան լերանց (Քոչի, յամի 1859), ասէ միայն զարևմտեայ լեպրակս Ալա լերանց ծածկեալս սրատերև մայրեօք, լարեկ-փիճեօք, և լիբանանեան մայրիւք. իսկ զարօտս նոցին ծանուցանեն հօրանք հովուաց Թուրքմանիկ տոհմից դեգերելոց զվայրեօքն։ Հասարակն լեռնագօտւոյն, յորում բազում ցըցուեալ խութք են, ոչ ուրեք զիջանի քան զ'7000' բարձրութեան. այլ «'ի շարս սուր և ժանեձև կերպարանացն' » բազում ուրեք միջամուխ լինին բրգաձև և գմբեթաձև » բարձրագոյն կատարք. գեղեցկագոյն է մանաւանդ հիւսիսայինն մասն, որ կանոնաւոր կերպարանօք վերամբառնայ 'ի չափ վսեմականն լերանց. ըստ բուսաբերութեան հարկ է լեռնագօտւոյս կարի այլազան լինել 'ի » Պուլղար լերանց[1] »։ Այսպէս գրէր բազում անգամ յիշեալ բուսաքննինն յամի 1853, և ցաւէր զի սահմանեալ կարգ ուղևորութեանն ոչ ներեաց նմա քննել «զամենայն նոր զայս սահման ֆլորայ» (ծաղկանց)։ Հարուստ նորութեամբք համարէր և զարևելեայ կողմն Գարաանտօղլու վիճակի, որպէս և զարևմտեայն Պէրէքէթլի մատենի։ Ցարևմտակողմն պարուն անձուկ և երկայնաձիգ ձորահովիտք են, և նկարագեղ լեռնաբլուրք փոքրիկ ձորակօք, որք անջրպետեն ընդ հովիտն Գօրգունի. ընդարձակագոյն է արևելակողմնն, ցածուն լեռնական շարիւ զատուցեալ 'ի ձորահովտէն Ջամանդեայ. զորոց արևմտեան դիմօք քերելով վտակաց ջուրց' իջելոց յարևելեան կողից անտի բարձրաբերձ լերանց Ալա-տաղի, ընդ կողմն հարաւոյ հուն գործեն 'ի Ջամանդի գետ։ — Սակաւուց չինից լսին անուանք. միայն մերձ 'ի խառնուրդս հարաւագոյն վտակին' նշանակի 'ի քարտիսի ուրեք Անմէտ գիւղ։ Առ այլով ևս վտակաւ' 'ի ձորամիջի ցրուեալ են գեօղք Աֆշարաց և ագարակաց նոցին, որոց յիշի իբր գըլխաւոր Գարաանտօղլու 30 կամ 40 տամբք, յարևելեան ստ մի լերանցն. չառք 'ի տոհմէ աստի Աֆշարաց կամ Թուրքմանաց' զինեալք էին և բռունք. գլխաւոր նոցա կալաւ զՉիհաչէֆ' յանցանել նորա ընդ սահմանսն (20 յուլ. 1853), այլ ակն ածեալ 'ի հրովարտակացն և յաղաչանաց' եթող. 'ի նմին ամի ուղևորելով և Լանկլուայ 'ի Կիլիկիա, 1300 վրանս գրէ Գարսանտըլը տոհմիս, և աւելի քան զ'90,000 գլուխս օդեաց, այծեայց և արջառոց, և 350 ուղտուց։ — Ժամաւ վերագոյն 'ի հիւսիսոյ գեղջս' առ օժանդակաւ միով գետակին կայ յունաբնակ այգեւէտ գեօղն Կեավուր-քէօյ, առ երի դժուարակոխ ուղւոյ վասն փրթածոյ և վիժման քարանց յարևելից կուսէ. բնակութիւն Յունաց[2] յայտ առնէ մետաղաց լինել 'ի սահմանքս. զոր աններկբայ ևս առնէ չիկագոյն և երկաթախառն խառնաձոյլ գետինն' սակաւ ժամուք վերագոյն ընդ հիւսիսի, յայնկոյս Քիլէքճի վտակի' հասեցելոյ սակաւուք հեռի 'ի նախընթացէն, նման նմին անձուկ ձորակաւ։ — Ըստ հիւսիսոյ սորա միւս ևս ձորակ է Ջալբունճի[3] կոչեցեալ, և ապառաժուտ և մայրևոր լեառն, ընդ որոյ մէջ և ընդ Ալա պարու' հոսի գետակն երագ երագ, ոչ աւելի քան զ'15 քայլ ունելով լայնութեան։ Աստի երկժամու վերագոյն է ձորակն Հաճիմանի, որ հանգոյն առաջնոյն 'ի Հս. Մ. ձգի ընդ Հր. Ել., ունելով առ եզերն զհանգրուանս Հաճիմանի-նայլասի, որ են հովոցք Գարսանտըլը Աֆշարաց։ Դժուարագնացք են և կողմանք ձորակիս, լերինքն անտառացեալք ուղղաբերձ փիճեօք կամ լարեկօք, յորոց միջի ուրեք ուրեք և սօսիք երևին, բայց մայրք ոչ, և 'ի բարձրաւանդակս' բարձրաձաղկ գիհիք (Juniperus excelsa)։ — Աստի և 'ի վեր անձկանայ հովիտն որ ընդ մէջ Ալատաղ պարու և սևակարմիր քարուտ անջրպետաց Ջամանդեայ. յորոյ յաջմէն սակաւուք հեռի և երկժամու 'ի Հս. Հաճիմանայ' կայ միւս ևս հանգրուան Աֆշարաց' և արօտք Պարզանս կոչեցեալ, յոր անուն և գեօղ վերագոյն ևս իբր երեք ժամուք, 'ի խաղս սօսաւէտ վտակին։ — Աստի ժամու և կիսով վերագոյն' կամուրջ մի է քարաշէն 'ի վերայ վտակի, որ հիւսիսագոյն է 'ի ծանուցեալսն յայսմ կողման Ալա լերանց, ուր և աւարտ պարու սոցին 'ի բարձրակատարն Ապիչ, և յելից նոցին բացագոյն' լիճն Պինկիւլ-կէօլ[4]. յելից հիւսիսոյ' յաստ մի լերանց Տէյիք-դաղ (Ծակքար) անուանեալ հանգրուան, որ իբրև հինգ կամ վեց մղոնաւ ևեթ յարևելից կայ նախագրեալ Էսկի-մատէն կապարահանից, և է 'ի ձորակի իբր եօթն կամ ութ մղոնաւ երկայնութեամբ, 'ի միջի իւրանման սրակատար բարձանց, առ որով են և մետաղահանք արծաթախառն, զոր Չիհաչէֆ համարի բարձր 2500 Չ. և աւելի։ Սուղ ինչ անդրագոյն ընդ հիւսիս' համարի սպառուած պարու Ալա լերանց, ընդ մէջ որոց և Անտիտաւրեան հաչակաւոր և մեծագոյն պարու' որ նովին դրիւք (Հր. Մ. ընդ Հս. Ել.) երկայնաձգի, կայ Քիւրմէզ լեառն և այլք մերձաւորք' հորիզոնական իմն դրիւք, այս ինքն 'ի Մ. ընդ Ել., 'ի սահմանս Ֆառաշոյ և Հաճինայ, ուր ոչ միայն բնիկ լերանցն' այլ և ողջոյն իսկ աշխարհին Կիլիկիոյ անջրպետք են 'ի նահանգաց Կապպադովկիոյ և Մարաշոյ։

Բայց արդ քննեսցուք և զհայրենի դիւանս մեր, 'ի գիւտ կամ յորոշումն գաւառի' որում վիճակեալ Թուիցին կողմանքս' որք 'ի Լամբրունէ և 'ի Կուկլակայ ցայս վայր։

## ՄՈԼԵՒՈՆ. — ԴԱՇՏ ՄԼՈՒՆԻ

49. Դասակարգ բերդորէից ըստ պատմչին Կիլիկիոյ և այլ ինչ յիշատակք' ցուցանեն զկողմանքս որ ընդ մէջ նահանգաց Լամբրունի և Բարձրբերդոյ, (որ է 'ի Հս. Մտ. Սըսոյ), առ պայազատութեամբ մերայոցս կոչեցեալ Նահանգք Դղեկին Մոլեւոնի, կամ Դաշտ Մլունի.

1 In der Reihe der Kantigen und zackigen Formen tritt mehrmalls die Pyramiden und Kegelform in den mächtigsten Spitzen hervor. Besonders schön ist der nördliche Theil, welcher in regelmässigeren Formen sich zu einem imposanten Gebirge erhebt. Dieser Gebirgzug dürfte in seinen Vegetationsverhältnissen von jenen des Bulgar Dagh sich bedeutend unterscheiden, etc. — Kotschy, 124.

2 Բայց Մուրատ Բէրիացի որ արարեալ է համառօտ վիճակագրութիւն մի Կիլիկիոյ յամի 1840 կամ կանխագոյն, 40 երդս Հայոց գրէ գեղջս. այլ այս Թուի յառաջ քան զեգիպտական մարտն, առ որով եկին Յոյնք 'ի գործ մետաղաց։

3 Չիհաչէֆ գրէ Tschaltgyngibi-dag.

4 Ըստ Քոչեայ. այլ հաւանօրէն Պէն-կէօլ կոչելի։

յայտ է թէ յանուն մեծի և ամուր Մոլեւոն բերդի, որ թուի նման Լամբրունի և Պապեռոնի մնացեալ 'ի վաղուց 'ի Ցունաց ժամանակէ։ Գիրքն գուշակին և յեկեղեցական վիճակագրութենէ. զի արքայեղբայրն Ցովհաննէս կոչի եպիսկոպոս «Նահանգաց աստուածապահ Դըղեկին Մալեւանի և մասին ինչ Բարձրբերդոյ». սահմանօքդ ուրեմն էր սորին՝ յարևմտից կուսէ։ Անունն, որպէս նշմարի 'ի յիշատակէդ՝ յոմանց սուղ տառիւ (ո) գրի և յոմանց ընդարձակ (օ կամ աւ), ես և Մաւլովոն, և համառօտեալ 'ի ռամկաց՝ Մուլուն և Մլուն. այսպէս գրեն և Արաբացիք Հըսն-էլ-Մլուն حصن الملون. իսկ 'ի Լատինաց՝ որք բազում անգամ զհայկական բառս ըստ ձայնին փոխէին և թարգմանէին յիւրեանց լեզու և յիմաստ, կոչի և սա Mons Livonis, և հոլովմամբ Montis Livonis. այլ և 'ի պարգևագրին Լևոնի Մեծի՝ առ ասպետս Հիւանդանոցին, յամի 1214, ռամկականաւն ձայնիւ գրի Երկիր Մլունի, in territorio Meloni. Ի սկզբան թագաւորութեան սորա՝ Աժառոս անուն էր իշխան բերդին և նահանգին, յանուանէն երևեալ ազգաւ Ցոյն գոլ, գուցէ և պայազատ հին զարմի, այլ մտեալ ընդ օրինօք թագաւորին Հայոց, որպէս և այլ ոչ սակաւ յոյն և լատին տեարք վիճակաց և բերդից։ Ցետ նորա յիշի միայն Սիր Լեւոն տէր Մոլևոնի. որ 'ի սկզբան թագաւորութեան Բ Լևոնի համախոհութեամբ Ապլղարիպի այլոյ մեծի իշխանի՝ յապստամբութիւն մտաբերեալ, և ձերբակալ եղեալ՝ մատնեցաւ ընդ նմին 'ի ձեռս Փէրվանէի զօրավարի Թաթարաց և կողմնապահի Փոքուն Ասիոյ (1271) [1]։ Հաւանօրէն յետ այնր զօրէն այլոց նշանաւոր ամրոցաց՝ յարքունիս գրաւեցաւ Մոլևոն, և առ Օշնիւ՝ 'ի սկզբան ԺԴ դարու՝ եղբայր նորին Ալինախ՝ ընդ Լամբրոնի և Կուկլակոյ տիրէր և սմին։ — Նմանապէս և յեպիսկոպոսաց կարգի երկու կամ երեք միայն ծանօթք են մեզ. նախայիշեալդ արքայեղբայրն Ցովհաննէս յամի 1260-90, Ներսէս յամի 1316 'ի ժողովի Ադանայ, և Մխիթար՝ որ յետոյ եղև կաթողիկոս (1341)։ Թեմն թուի հաստատեալ 'ի շնորհս առաջնոյն՝ յարքայէ եղբօրէ իւրմէ և 'ի հօրէն, և մասամբ հին թեմին Բարձրբերդոյ ընդարձակեալ. այս Ցովհաննէս կոչի և արքեպիսկոպոս, ոչ գիտեմ թէ և յաջորդքն։

Երկեկի դիրք նկատելի են 'ի Մոլևոն, Դղեակն աստուածապահ 'ի Գահս Կիլիկիոյ, և Նահանգքն 'ի դաշտակողմն. որ է ասել, թէ ոչ հեռի 'ի դաշտաբերանոյն կայր բերդն 'ի վերջին տեղագրեալ լեռնակողմանս և 'ի ձորահովիտս օժանդակաց Սարոսի. և պարզագոյն ևս ասել, 'ի լեռնահովտին Գորգոնի, ուր թերևս և յիշեալ իջեվանն և տոհմն Մէլիմէնճի կրէ ցարդ ընդ աղօտ ծեքմամբ զանուն Մոլեւոնի. որոյ ոչ միայն դիրքն մերձ 'ի դաշտակողմն 'ի ճահ գան բանիս, այլ վկայեալ է և 'ի հարևանցի քննողէ կողմանցս, ըստ բանի տեղացեացն՝ եթէ երկու և կէս ժամու բացագոյն 'ի լերինն են աւերակք՝ Էսկի-դաշ (Հին քար) անուանեալք, որոց ցանկալի է հետազօտութիւն։ Հաւանելի է թէ և լեռնուղին ընդ մէջ Ալատաղ պարու և վերջին դարևանդից Պուլղարայ՝ ուր զիջեվանն յիշեցաք (յէջ 125), իցէ անուանեալն 'ի մերայոցս՝ Փող Մոլեւոնի, որպէս նշանակի 'ի յաւելուածս ժամանակագրութեան Սամուէլի. եթէ, Եգիպտացիք յետ առման Այաս քաղաքի, «գերեցին զՄոլևոնին փողն». զի հաւանօրէն ոչ կարացին առնանել բերդին. յորում յետ սակաւուց (1299) գործ ապիրատ գործեաց Սմբատ արքայ, զկնի խեղդամահ առնելոյ զմի յեղբարցն, աստանօր և զանդրանիկն զՀեթում՝ խաւարեցուցեալ յաչաց՝ արկ 'ի դիպ ահօջ, յորմէ զերծոյց միւս ևս եղբայրն՝ Կոստանդին, հալածեալ զՍմբատ։ — Ի տկարանալ իշխանութեան Հայոց՝ յետ մահուան արքայիցս և արքայեղբարց, առ տղայ թագաւորաւն Լևոնիւ Դ, յամի 1323, յետ աւերման Այասայ՝ գրէ ոմն. «Ցիշաւ (ապստակ) «արարեալ զօրայն Թուրքաց՝ զՄլունն զամէն առ հասարակ «'ի մեծէ մինչև ցփոքունս գերեաց, և հրով այրեաց «երկու պուրճ. և բազում քրիստոնեայք հրով կատարեցան»։ Ցայսմ նուագի ևս թէպէտ և մասամբ աղարտեալ է բերդն, այլ թուի զերծեալ 'ի սպառասպուռ աւերմանէ, թերևս նոյնպէս և յետ երկոտասան ամաց, յորժամ Ալթուն-պուղա նայիպ Հալպայ, ըստ առաջնոյ օրինակին՝ յամի 1335 «յիշուեց յերկիրս 'ի ԻԵ մայիսի [2], 'ի «հինգշաբաթի յաւուր Համբարձման Փրկչին, և երեկ զօրդ «'ի Մլունն, յԱտանայու ինչվի Տարսուս... ու գնացեալ 'ի «Մոլեւոնին առջև, ու կեցաւ ինն օր յերկիրս ու ելաւ»։ Այս վերջին յիշատակ է Մոլևոնի, որ և թուի նպատակ հարուածոյ թշնամեացն, ըստ կրկին յիշման անուանն 'ի գրչէ աստի. որում՝ ըստ այսմ դիտման՝ ներելի է յետև առաջ դասաւորութիւն անուանց տեղեացն կոխելոց. զոր օծով ևս նշանակէ յաւելիչ ժամանակագրութեանն Սամուէլի, եթէ զխարդ «ձիընթաց արձակեալ... 'ի մի գիշեր և 'ի մի օր՝ հասեալք 'ի Մամուեստիա և յԱտանա, «և 'ի թագաւորանիստն, և 'ի բոլոր դաշտս Մուլունին, զի «թերևս ըմբռնել կարասցեն զթագաւորն Լևոն», որ զի խաղաղութեան ժամանակ էր՝ ըստ դաշանց, անկասկած և անպատրաստ կայր։

Ցոգնաբար՝ Նահանգաց Մոլևոնի ասումն և բոլոր դաշտ նորին՝ յայտ առնեն զի ընդարձակ էր գաւառն, և թուի ինձ հիւսիսակողմն Ատանայ, միջագետք Ջագրոսոյ և Գորգոնի, մերձ 'ի գետախառնունս նոցին և անդր քան զայն. յորում հարկ է թէ սփռեալ կային ոչ սակաւ շէնք. այլ հազիւ թէ երկուք կամ երեք յիշեալք 'ի գիրս. իսկ զարդիս՝ թերևս անծանօթագոյն ևս են սահմանքն, զէթ առ 'ի մէնջ։

Գլխաւոր 'ի յիշատակելոցն տեղեաց 'ի գիրս՝ է Վաներ բերդաւան, որոյ իշխան 'ի թագաւորութեան Լևոնի էր մարաջախտն Վասիլ, վախճանեալ յառաջ քան զամ 1214. յետոյ տեղին ընդարձակ սահմանօք՝ գրաւեալ էր յարքունիս. քանզի յայնմ ամի 'ի տալ Լևոնի զդուստր իւր Ռիթա (ըստ այլոց՝ Ստեփանէ) 'ի կնութիւն Ցովհաննու Պրիենի՝ անուանեալ թագաւորին Երուսաղեմի, առ 'ի լրումն օժտի նորին՝ առեալ տասն հազար բիւ-

1 Ժամանակագիր մի ասէ. «Մոլովոնին տէրն Սիր Լէոն և Ապլղարիպն մատեցին, և ըմբռնեցին 'ի Փարվանայն»։

2 Ցօր. ԻՋ մայիսի գրեալ էր, բայց 'ի յիշեալ թուականին՝ որոյ տարեգիր է Պ՝ 'ի 25 մայիսի գայ տօն Համբարձմանն։

զանդ սառակին ոսկի 'ի Հիւանդանոցին ասպետաց, ետ նոցա 'ի գրաւ զՎաներ համօրէն սահմանօքն, գիւղովք և հանդրուանօք, արտովք և մայրեօք, ջրարբի և անջրդի վայրօք[1]. ընդ որս յիշին և ծովեզերեայ վայրք՝ կալուածք նորուն և նաւակայք. (Totam terram ... et maritimam, cum portu et introitibus et exitibus suis), բաց յերկուց ձկնատենից (exceptis duabus piscationibus), կոչեցելոց Կոռվիմ? Corvim, և Սաաբրաս? Saabras, զորս յայլում նուագի տուեալ էր նոցա։ Ստորագրեցին պայմանագրին զատ յայլոց՝ Կոստանդին Գունդստապլ, Վահրամ մարաջախտ, և եղբայր նորա Ճօշլին, Լևոն de Biulum, և ութ յասպետաց անտի, 'ի 23 ապրիլի. 'ի Տարսոն քաղաքի։

Միւս ևս աւան մեծ 'ի սմին վիճակի Մոլևոնի՝ պարգևեալ էր Լևոնի յառաջ քան զՎաներ, յամի 1212, այլում կարգի ասպետաց, այն է Տևտոնաց կամ Ալամանաց, (Domus Hospitalis Teutonicorum), որոց և եղբայրակցեալ զինքն ասէ 'ի պարգևագրին, և յայժ դրուատէ, զկոչեցեալն Գումբէթփոր? Cumbethfor, կամ թերևս Գմբէթբերդ, զի ոչ գտանի անունս 'ի հայ գիրս. Cumbetefort գրէ կանոնիկոսն Վիլլեպրանտ, որ յայնմ կամ յառաջնումն ամի էանց ընդ այն՝ 'ի գալ իւրում 'ի Մըսայ 'ի Տարսոն[2], և վկայէ լինել բարւոք կայան Տևտոնաց։ Լևոն ճշգրտէ և զսահմանս վիճակի աւանին՝ իւրաքանչիւր անուամբք[3], զորս՝ ցաւէ ինձ չկարել ստուգել 'ի հայումս, վասն յեղափոխութեանն և խեղութեանց 'ի լատին գրչութեան. բայց նշանակին սահմանքն այսպէս. յարևելից, ընդ արքունի պողոտայն ցսահմանաքարն՝ որ ընդ մէջ աւանին և Տետիմեկայ? (Tetimec), ուր ածուխ եդեալ էր ընդ քարին, որպէս և ընդ սահմանաքարիւ Վանկուն (Vancun), ցոր վայր հասանէր սահմանն յայսմ կողմանէ. – յարևմտից, մինչև 'ի սահմանս Բեղեգնոց? կամ Եղեգնոց գեղջ (Beleguinos կամ Belegiunos), ուր բնակէին շինականք յԱրենկ (Arenc կամ Arench), և էր կալուած վանաց Ս. Աստուածածնի Տուրրեայ (աշտարակի?), Sancte Marie de Turri. ուր նոյնպէս կայր սահմանաքար և 'ի ներքոյ ածուխ. և անտի ձգէր մինչև 'ի Սիւնն կճեայ. — 'ի հիւսիսոյ, ընդ կողմն Կեսարիոյ՝ մինչև 'ի Տուրոն (թերևս բլուր մի), ուր նոյնպէս սահմանաքար և ածուխ 'ի ներքևն. – 'ի հարաւոյ՝ մինչև 'ի սահմանն Բաղանեաց? (Bagnigum), ուր խաչ կանգնեալ է, և մինչև ցժայռն կամ ակառն (rocha), առ որով նոյնպէս քարինք և ածուխ։ Դարձեալ և 'ի կողմն Կեսարիոյ և Աբրայինանց? (Աբրահամենց? Ապարանից?) են վէմք հաստատեալք՝ ածղով, և 'ի միջի վիմացն խաչ քարեղէն։ — Գուցէ 'ի սմին նահանգի Մոլևոնի էր և Այուն գիւղ (Ayun), զոր ընդ Գումբէթփորի, ընդ Ամուտայ բերդի և այլոց ինչ աւանից՝ պարգևեաց Լևոն՝ Ալամանացն, քանզի և այն սահմանակից ասի Վանկունի։ Զայս ամենայն ձրի առ սիրոյ և երախտեաց ասէ շնորհեալ նոցա, «ըստ օրինաց և սովորութեան Փռանկաց». և վաւերացուցանէ կարմրադեղով և ոսկի կնքովն. զորս անեղծ և անջինջ տեսեալ վկայէ Գուլիելմոս Բ պատրիարք Երուսաղեմի, յետ իբր 60 ամաց (1263-70), և ծայր 'ի ծայր ընդօրինակէ զպատճէնն։ — Տարադէպ թուին կարծիք Լանկլուայ որ զԳմբէթփոր և զծովեզերեայն Մալլոյ քաղաք նոյն համարի։

Երկրորդ տեղի աւանդեալ մեզ 'ի գրոց՝ էր վանք կամ անապատ մի հուպ առ բերդին Մոլևոնի, ըստ հակիրճ անթուական յիշատակարանի գրոց նոր կտակարանի, գրեցելոյ

« Ի դղեակս Մոլևոնի
» Ի յԱնապատս որ Կամբիկ կոչի.
» Ընդ հովանեաւ Աստուածածնին,
» Եւ Առաքելոցն Պետրոսի և Պօղոսի
» Եւ Աքանչելագործ Ս. Նշանի,
» Որ պահապան սա մեզ լիցի.
» Ի թագաւորութեանըն Լևոնի։

» Արդ յիշեցէք զփակակալ սուրբ Ուխտին Կամբկանն
» զՑովհաննէս պատուական կուսակրօն քահանայ, որ
» ետ զսա փափագանօք գրել », և այլն։ Ոչ զայս և ոչ զՎաներ և ոչ զայլս որ 'ի սահմանս նորին՝ ոչ գտի յիշատակեալ յայլ գիրս։ — Իսկ հռչակաւորն այն բերդ Մոլևոնի՝ անագան ուրեմն ևս յերևան գոյ յետ կոյս ԺԵ դարու, յՕսմանեան պատմութեան, որոց գրիչք Մուլևն կամ Մուլվանէ անուանեն. չէն էր տեղին առ Բ Պայէզիտաւ 'ի մարտին ընդ Եգիպտացիս, և տեարքն՝ որ Թըւրքմանք, կամաւ հնազանդեցան ընդ ձեռամբ սոցա, այլ Եգիպտացիք վերստին նուաճեցին (յամի 1487). իսկ 'ի գալ միւսոյ ամին՝ Ալի փաշա պէկլէրպէկ Ռումէլիոյ՝ թափեաց 'ի նոցանէ, հանդերձ Լամբրունիւ և Կուկլակաւ. ընդ որս յիշին և Խօճա-գալէ բերդ՝ ընդ մէջ Ալատաղ և Իւչգափու լերանց, որ է 'ի սահմանս Պէրէքէթլի մետաղաց, և Աշէնգաշ կամ Աշնագաշ, որ թուի ընդ մէջ Կուկլակայ և Մոլևոնի։

1 « Ego Leo, Dei gratia Rex Armeniæ, ... Dono et concedo Helemosinarie domino Fratri Garin de Monte Acuto, venerabili Magistro... » quoddam casale nomine *Vanerium*, in territorio Meloni situm, cum » casalibus, guastinis, terris cultis et incultis, aquis, nemoribus, pascuis » et aliis omnibus sibi pertinentibus », etc. — *Cartulaire*.

2 .... Transeuntes Cumbetefort, ubi domus est et mansio bona Hospitalis Alemanorum, venimus Tursolt (Tarsus). — Willebrand.

3 In territorio Meloni, aliud casale nomine Cumbethfor cum pertinenciis et divisionibus ipsius signatis. A parte orientis extenditur sicut vadit via usque ad petram inter Cumbethfor et Tetimec, et sunt infra petre pro metis fixe et subter carbones; de hinc extenditur usque ad metas petrarum fixas ex parte Vancun et carbones subter; a parte occidentis inter Cumbethfor et Casale dictum Belegiunos, quod habitant villani de Arench, et est Sancte Marie de Turri, sunt mete petrarum fixe et subter carbones; de hin extenditur usque ad columpnam marmoream. A parte septemtrionis, versus Casseriam sunt mete fixe et subter carbones, et vadit usque ad Turonum. A meridie, extenditur usque ad metas de Bagnigun, ubi *crux* est posita et usque ad *rocham* et infra sunt petre fixe et carbones supter. A parte *Abraainain*, et *Casserie* sunt petre fixe et carbones subter, et in medio petrarum fixarum est *crux* de petra. Item aliud casale nomine *Ayun* cum pertinenciis et divisionibus ipsius signatis. A parte *Calasie*, est crux de petra et carbones subter, supra viam que ducit ad Vancun. A parte orientis, extenditur ad *Pertusum vulpis*, et est ibi *crux* de petra, de hinc extenditur usque ad ovile et medio sunt mete de petra quinque et carbones subter. A parte Vangum, usque ad aliam *crucem* de petra que fixa est juxta gastinam supra viam et in capite vie est alia petra et via ibi dividitur. His ita assignatis, item dono et concedo a modo in perpetuum eisdem fratribus, etc. — *Cartul.* 119.

30. Ի սակաւ տեղիքս յիշեալս 'ի գաւառին Մոլեւոնի՝ արժան համարիմ յարել և զգահաւորական վայր եպիսկոպոսի Նորուն, զԳռներ, որ երբեմն Անապատ կոչի և երբեմն Սուրբ ուխտ, և նշանակաւ մեծութեան կամ բարգաւաճանաց՝ « հռչակելի սուրբ ուխտ Գռներոյ »։ Թէպէտ և ասի լինել ոչ միայն հասարակօրէն « 'ի գաւառիս Կիլիկիոյ », այլ և « 'ի Գահս Կիլիկիոյ, 'ի գաւառն Բերդին Բարձր ասացելոյ [1] », և « մերձ յաստուածապահ դղեակն Բերդ Բարձր կոչեցեալ [2] »․ այլ զի սահմանակիցք էին գաւառքդ Մոլեւոնի և Բարձրբերդոյ, և յետնոյս մասն յաւելաւ յառաջինն՝ լինել թեմ Յովհաննու արքայեղբօր, յայտ է թէ յայնմ մասին էր և Գռներ, որ եղև նիստ եպիսկոպոսին Մոլեւոնի. իսկ Բարձրբերդոյ եպիսկոպոսն կարծեմ նստէր յԱնդրիասանց ուխտն։

Անյայտ են արդ դիրք Գռներոյ, այլ մեծութեան Նորին կամ համբաւոյ՝ վկայութիւն ընծայէ բան աշխարհագրին Վարդանայ, որ 'ի վանօրէից Կիլիկիոյ չորս միայն յիշէ իբրև գլխաւորս, զԴրազարկ, զԱրքակաղնի, « և զԳռներուն սուրբ ուխտն »․ չորրորդն Կեւեռնայ անապատն, Թուի Սկեւռայ գրելի կամ ընթեռնլի։ Արքայեղբայրն՝ յորոյ շնորհս պատուեցաւ տեղիս այս՝ յինքնագիր աւետարանի՝ յամի 1263, տայ և նշանակս ինչ զօրութեանց Նորին․ « Ի սուրբ Անապատն Գռներ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ և աստուածակիր Նշանին Կայսերին կոչեցեալ, և Սրբոյն Սիոնի մօր մեր »։ Ամենայն հասեալ առ մեզ յիշատակք տեղւոյն 'ի սմանէ (Յովհաննէ) են կամ զմանէ. յետ որոյ միայն յիշի 'ի Գաւազանագիրս ուրեք՝ Մխիթար կաթողիկոս, յառաջագոյն (քան զ'1341 ամն), լինել « 'ի Գռներոյն՝ եպիսկոպոս »։ Արդ զի բովանդակ յիշատակք Գռներոյ ժողովին 'ի մի յայս այր, այսինքն է յարքայեղբայրն Յովհաննէս եպիսկոպոս, որ և կանգնող և պայծառացուցիչ տեղւոյն երևի, և մի է 'ի կենդանագոյն դիմաց իւրոյ ժամանակին և ընտանեացն, արժան համարիմ գլխաւորել աստանօր որ ինչ ծանօթս է վասն նորա։

Արդ էր նա, որպէս բազում անգամ ինքնին գրէ, (զի և գտանին ցարդ ոչ սակաւ մատեանք գրեալք 'ի նմանէ և վասն նորին), « որդի քրիստոսասէր և բարեպաշտ իշխանաց իշխանին Կոստանդեայ Թագապահի և արքայահօր Հայոց, և եղբայր քրիստոսապսակ քաջ արքային Հեթմոյ », համահայր, որպէս գրէ այլուր, այլ ոչ համամայր. և ոչ է յայտ բնական մայր իւր իցէ կոչեցեալն ուրեք 'ի նմանէ մայրիկն Պիադր(իչէ), եթէ սանամայր. քանզի նախ 'ի կարգի անդ բանին մաղթէ թողութիւն հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց՝ որք ըստ հոգւոյ և մարմնոյ, « զի յոյժ ջանիւ աշխատեցան յիս, (ասէ). յաւէտ երջանիկ կրաւնաւորն Հռիփ., և մայրիկն իմ Պիադր »։ Յայտ է և յարձանագրէ եկեղեցւոյն Պապեռօնի յամի 1241, զի ոչ յիշի ընդ չորեսին որդիս Կոստանդեայ. ապա հաւանելի է թէ կամ յետոյ ածեալ է սորա կին և ծնեալ զսա և զայլս, կամ թէ և յառաջ քան զայն Թուական, այլ վասն անտիական հասակին ոչ յիշեցեալ անդ ընդ չափահաս և ընդ պաշտօնակիր եղբարսն։ Ժամանակ ձեռնադրութեանն յեպիսկոպոս, և քերդուած մի Նորին 'ի միջոց 1254-6 ամաց՝ պահանջեն բաւական երիցութիւն հասակի. այլ զի կանխէր հասունութիւն այնպիսեաց ոմանց, որպէս Լամբրոնեցւոյն մեծի, Թողցի յապայն գիւտ ժամանակի ծննդեան նորին. չատ է մեզ գիտել ըստ իւրում վկայութեան՝ զի անդստին յերեխայ հասակէն կարգեցան նմա դաստիարակք զգօնք, և յոյժ ջանիւ աշխատեալ հրահանգեցին զնա՝ այնպիսի հայր հնարագէտ, և այնպիսի բազմաշնորհ եղբարք, որպէս Թագաւորն Հեթում, Գունդստապլն Սմբատ, և արքեպիսկոպոսն Դրազարկու Բարսեղ. ըղյետնոյս՝ գրէ ուրեք (յամի 1263) ինքնին Յովհաննէս, մաղթելով յիշել « զաստուածապատիւ արքեպիսկոպոս արքայեղբայրն Հայոց՝ զտէր ոգւոյ և զերախտաւորն մարմնոյ իմոյ զԲասիլիոս, որոյ երախտիք գերազանց է քան զբան և զմիտս՝ 'ի կրսերս իւր »․ ապա Թուի ընդ ձեռամբ նորա դաստիարակեալ 'ի հռչակաւոր վանս Դրազարկու։ Յաւազանէն կոչեցեալ էր Պաղտին. որպէս ծանուցանէ Պատմիչ տանն. յամի 1259, « Ի տօնի Գալստեան Հոգւոյն Սրբոյ, ասէ, եղև ժողով մեծ 'ի Տարսոն քաղաք․ և յետ աւուրց ինչ ձեռնադրեցին զարքայեղբայրն զՊաղտինն՝ եպիսկոպոս, և անուանեցաւ Տէր Յոհաննէս »․ ինքն իսկ գրէ 'ի յիշատակարանի ուրեմն (յամի 1286), « որ երբեմն Պաղտուոյն կոչէի »։

Առաջին յիշատակ նորին և երկասիրութիւն, որ և ցոյց բարգաւաճ մտացն 'ի մանկական հասակին՝ է քերդուածն « Յարքային Հեթումն մինչ 'ի Տարսոն էր, որոյ նախագիծ տանցն ըստ անուանն է ոգեալ »․ այսինքն տնագլուխ տառքն կազմեն զայս բան, « Երգս Հեթմոյ է արքային Հայոց. ա(ի) Յոհաննիսէ կրսերէ իւր »․ և սկիզբն է,

« Երրորդութիւն սուրբ, Աստուած անսկիզբն եւ անեղ »․

'ի վեցերորդ տանն՝ յիշելով, զի

« Երբեմն անաստուած գոլով Հայկազեանք՝ տիրէին
Բազմսկոյտ ազգաց և ազանց »․

Իսկ յորժամ Թագաւորն երկնաւոր ազատեաց զմեզ, ասէ, 'ի հոգևոր գերութենէ, պահելով

« Դարձեալ ըզմերն արքայութիւն...
Ոչ ձայն գոհութեան և ոչ մաղթանաց վերհընչեալ.
Այլ կացեալ անկռինչ անյարիր... (վասն որոյ)
Եղաք նախատինք զարմից համայնից
Եւ մատնեալք տերանց անբարեաց չարաց։
Այլ դու, Տէր անյիշաչար, ոչ արարեր անտես խպառ.
Պահեալ մի խանձող 'ի հրոյն, զոր սաղարթիւք պճներ
առոյգ.
Բամեալ 'ի դալար վայրոջ և հանգստեան ջրով սնուցեր,
Որոյ արքայ ընտրեցեր, զոր աջով քո պըսակեցեր.
Քարոզտալով մեզ ըզնա՝ վարուք բանիւք փոխանքո, Տէր,
Որոյ Հեթում մակագրէր, սիրոյդ սիրով յաւէտ վառէր...
Նըման հովուիդ մեր քաջի՝ մատնեաց զանձն իւր ազգին
կարի.

1. 2 Նորին արքայեղբօրն Յովհաննու են և բանքս այսոքիկ 'ի յիշատակարանս ձեռագրաց՝ իւր կամ վասն իւր գրելոց։

Գուցէ բա՛ հնարաւոր լինի՝ որով փրքրիկն այն հօտ փրկի։
Հոգի քո սուրբ և բարի՝ նըմա յաւէտ ընթացակցի,
Առնել զջանն իւր ըստ մտի, տալով պսակ գլխոյն մեծի.
Աւետաբեր աղաւնի բերէր ըզնա նեղեալ անձանց », եւ։

Ապա փոխեալ զոճ բանիցն՝ մաղթէ Որդւոյ Աստուծոյ.

« Որդի Բարձրելոյ եւ հաստարմատ սիրոյ,
Ձեէր քո բազմացո առ անարժան հօտ քո.
Հողմով քոյ Հոգւոյ եւ Հօր բազկիդ աջոյ՝
Հովանի լիցիս մերն արքայի Հեթմոյ.
Անդ տալ շնորհս նմա որպէս Դանիէլի,
Առնել զզարձ նորա ըստ Զօրաբաբելի։..
Սրտացո ըզմեզ, ո՛վ սուրբ Երրորդութիւն.
Ցեալեամբ տենչալւոյն տուր զմեծ խաղաղութիւն», եւ։

Մաղթէ յետոյ և Սրբոյ Աստուածածնի, ասելով.

« Եթէ կամեսցիս՝ կարող ես, Սրբուհի.
Ընդ որ զուարճասցի Աստուած մեր և քոյդ որդի.
Ի մաղթանըս մեր նայեաց՝ տաճա՛ր բանին կենաց.
Առեալդ զսյսըր փորձ՝ փրկեա ըզմոեալքս 'ի փորձ.
Ի խաօղ հաստուածելոցս լեր 'ի մերըն գլուխ,
Նովաւ միացո զմեզ 'ի միայնըն մի ». և այլն։

Յառաւօտուց այսպիսւոյ հանճարոյ՝ արժան էր ակն ունել պայծառ տուընջեան. և թէպէտ չէ հասեալ 'ի ձեռս մեր կարեւոր ինչ և մեծ երկասիրութիւն առ 'ի նմանէ, բայց և սակաւ ինչ մնացորդք երգոցն և յիշատակարանքն իսկ՝ նշոյլք են հաւաստեաց. և ոչ վայրապար համարիմ զասացեալն նմա 'ի Մխիթարէ ումեմնէ՝ յինքնագիծ գիրս ինչ նորին. « Ո՛վ սրբասնեալ և աստուածային խո-» րոցն խորհրդածոյ, և անճառելեաց իմաստիցն բացա-» յայտող, և քննիչ խորոցն Աստուծոյ, և պատմող ըստ » 'ի վերուստ որոտացելոյ Բանին, յինքեանդ յամբա-» րեալ վարագուրաւ մարմնոյդ, ասւրբ տիեզերալոյս վար-» դապետ և տէր, և ըստ հոգւոյ հայր մեր և առաջնորդ, » ընկալ զսակաւ գծիկս յանարժանէս Մխիթարէս և 'ի » կրսեր քո ծառայէս, և միշտ յիշեա զիս ». և այլն։ Զկք թուական մատենիս և յիշատակարանիս, այլ ոչ կարծի Մխիթարն Գոնեցի կաթողիկոսն՝ լինել, որ վաթսուն և վեց ամաք յետ Յովհաննու վախճանեալ է. բայց եթէ ա-տելով և զսա համանման նմին կանխահանճար մանուկ։ — Թերեւս առաւել մեծարանօք գրէր առ սա քաջածա-նօթ և մեծ բանասէրն Գէորգ Լամբրունեցի, վերընծա-յելով գխմբագիր Մեկնութիւն գործոց Առաքելոց. « Ա-» հա, ո՛վ աստուածասէր հայր իմ և տէր, հարկեցուցիչ » խնդիրս քո և պատկառելի շուք երեսացդ՝ դարձեալ » գրաւեաց զիս ահիւ », և այլն. և մակագրելով 'ի գլուխ գրոցն, «Առ խնդրողն համառօտիս՝ տէր Յովհաննէս ար-» քայեղբայր, և եպիսկոպոս Նահանգաց աստուածա-» պահ դղեկին Մաւլեւանի և մասին ինչ Բարձրբերդոյ, » և նոյն տեսուչ հռչակելի սուրբ ուխտին Գոներոյ »։

Ծանօթք մեզ յարտադրութեանց Յովհաննու՝ են Ցաղ 'ի Ս. Աստուածածինն, « որոյ նախագիծ տանցն ըստ ա-» նուանն է ոգողին, մեծին Յովհաննիսի վարդապետի » ասացեալ, եղբօր թագաւորին Հայոց ». այսպէս մա-կագրի 'ի հին և յընտիր տաղարանի, և տնագլուխքն կազմեն զբանս, « Յոհաննու եավ ասացեալ նուագ Աս-« տուածածին կուսին Մարիամու ». և սկսանի,

« Յոր Էն Հօրէն կատարեալ կանխաւ մինչ 'ի վախճան,
Աքանչելի տաճար իւր ծոցածնին և Էակցի »[1], և այլն։

Եւ համառօտ Մեղեդի մի ապաշխարութեան, որոյ տա-ղագլուխք կազմեն զբանս «Յոհաննէս վայ քեզ». և սկսանի

« Յորժամ ածեմ ըզմտաւ զօրն ահագին՝
Ոսկերք որդւոյս կորստեան կործանի.
Հոգիս հոգալոյն հրով տոչորի, հալեալ մաշի ». եւ։

Զեն բաւական այսքիկ առ մեծ համբաւ Յովհաննու գի-տութեան և գրութեան, յոր սակս համարիմ զկոչումն նորա՝ Րաբունի, որպէս գրի 'ի յիշատակարանի Աստուա-ծաշունչ գրոց յամի 1270. և ինքն իսկ գրէ. « Ես Յոհան-» նէս եպիսկոպոս և րաբունի », 'ի գիրս Ս. Դիոնիսիոսի Արիոպագացւոյ, զոր յամին 1271 ընդօրինակէին Ստե-փանոս և Յովհաննէս, այլ և Վասիլ ոմն և Սոսթենէս քահանայ։ Նոյնպէս (րաբուն) կոչեալ է վաղագոյն եւս 'ի գեղեցկագիծ մատենիկան գրոց Սողոմոնի և Յովբայ, զոր մասամբ 'ի ձեռն այլոց և մասամբ իւրով ձեռամբ գրեալ, (որպէս ցուցանէ լուսատիպս այս յիշատակարան), ըն-ծայեաց Զխմեայ՝ տիկնոջ Սիգոնի, դստեր արքայեղբօր իւրոյ Հեթմոյ, 'ի սփոփանս և 'ի մխիթարութիւն.



Դարձեալ նոյնպիսիս գրէր և չափական բանիւ առ նոյն, որոյ տնագլուխք յօդեն « Յոհաննէսս ասեմ ». և այլուր

Ի խուսեալ տաճարըդ վըթար, որոյ հիմունքըն չափիւզայ,
Անգինաքարինքըն յաապիս, և միջնայեաքըն վանեայք.
Սիւնքըն նորա եօթնեքին, խարիսխքն 'ի նմա արծաթիք,
Սընարք նոցա ոսկեղէն, քառակերպիցըն նման.
Ի վերնայարկըն սորա հիանըլշմար քերոբիմք,

[1] Ի բազում փափուկ բանից տաղիս՝ յաւելցին աստանօր և այս տողք, որք և կարծիս տան 'ի նուաստիս տաճարի միոյ Սրբու-հւոյն նուագեալ.
« Ոսկիատիպ սիրամարգ, քաղցրաձայնիկ տատրակիկ,
Ձայնիւ կոչող հաւ կաքաւ զմանկունսն՝ որ ոչ էր քո ծնեալ.

յիշատակ առնէ զգուանօք և զաւակաց Նորին. «Զի-
» մաստութեամբ լցեալն և զամենայն բարեձևութեամբ
» զարդարեալն, զսիրողն Աստուծոյ և զսպասաւորն ա-
» մենայն ծառայից Նորա՝ զարքածին բամբիշն Ֆիմի, և
» զաստուածապարգև զաւակսն Նորին՝ զՊալիան և ըզ-
» ճուան և զհեզանազն Մակրուն (Մարգարիտ) յիշեցէք
» 'ի Քրիստոս », և այլն [1]: — Են այլ ես մատեանք ձե-
ռին Յովհաննու եպիսկոպոսի, կամ հրամանաւ և խնամօք
Նորին գրեալք [2], 'ի մեր իսկ 'ի ձեռս հասեալք կամ 'ի
գիտութիւն, յորոց գուշակի քաջ ընթերցասէր և ժամա-
նակի յարգող: Մի 'ի կանխագոյն գրչացն է Աւետարան
մի [3], զորմէ ասէ յամի 1263, «Մեծագոյն ջանիւ և ջերմ
» սիրով գրել ետու ... ձեռամբ քահանայի Թորոս գրչի.
» և նկարագրեցաւ սա յայլևայլ գրչաց ... 'ի սուրբ ան-
» ապատն Գռներ կոչեցեալ ». և կրկին մաղթէ վասն
եղբօր իւրոյ և արքայի Հեթմոյ. «Զի սյս գլուխ, ասէ,
» յետ առաջնոցն՝ հնարեցաւ և հնարի զփրկութիւն բազ-
» մաց քրիստոնէից. ոչ զԿիլիկոյս ևեթ ասեմ զաւառ
» անմխաս պահել՝ 'ի լիզալինչ առնողէն հինից Նեստո-
» ղացն, այլ գրեթէ և զամենայն քրիստոնեայսն՝ որ ուն-
» կըն դնեն կենսատու խրատու սորա ». և այլն: — Կա-
րևորագոյն ևս են բանք և ճահագոյն աշխարհագրական
գիտմանս՝ յիշատակարան այլոյ աւետարանի ձեռնագրի
իւրոյ, յամի 1280, զորոյ և զպատճառս յայտնէ վայե-
լուչ սկզբնաւորութեամբ. «Անմահին մահու մահակից և
» փառաց Նորա Թագակից՝ հարք մեր և եղբարք 'ի Քրիս-
» տոս՝ ժառանգողք սորա և տեսողք և գաղափարողք ...
» ձեռամբ իմով գրեցի զսա ... յամին ՉԻԹ Թուականիս
» Հայոց, ես Յովհ. եպիսկոպոս Նուաստ ծառայ Աստու-
» ծոյ իմոյ Յիսուսի Քրիստոսի և կրսեր ձեր ծառայակից »:
Եւ յետ այլ բանից. «Օրհնեալ հոգի հօրն իմոյ Կոստան-
» դեայ: Եղէ այցելու սուրբ Անապատին Գռներ կոչե-
» ցեալ 'ի Գահս Կիլիկիոյ, 'ի գաւառն Բերդին Բարձր
» ասացելոյ. յորժամ տիրէր հայրն իմ գղեկին, և կըր-
» սերս՝ Անապատին. յորում տաւաղեալ բնակէի իբր
» անխռով և անքոյթ Նաւահանգստի, բերկրեալ միշտ
» աստուածաշունչ տեսլեամբ մեծ Նահապետին հօրն մեր,
» և կրթեալ սուրբ տառիւք. տեսի զնորին շինեալ գիւ-
» ղաքաղաքն յանուն իւր՝ Կոստանդնոց կոչեցեալ, լի 'ի
» Քրիստոս հաւատացելովք բազմօք, առաքինի երի-
» ցամբք և սարկաւագօք. ընդ որս խրախացեալ՝ յան-
» ձին կալայ իմովս իսկ մեղսամակարդ ձեռամբքս գրել
» Նոցին զսուրբ աւետարանս. յոր և յանկ ելեալ Տերամբ
» 'ի մէջ ամբոխից և պաշտամանց ... գրեցի զսա. լաւ և
» ընտիր կազմեալ, որպէս տեսանի. և ետու զայն 'ի
» գեօղն Կոստընդնոց, որ էին Նախ Կարմիր-գտակնի
» կոչեցեալ ... Բայց գրեցաւ 'ի յոյժ տրտմութեան ժամ.
» զի սյս երիցս ... հրձիգ զամենայն Կիւլիկիա արարին ...
» և քրիստոսասէր տէր իմ և եղբօրորդի արքայն Լևոն՝
» իբր զգլթած հայր ժողովէ և մխիթարէ զմնացեալսն, և
» ևս բարիոք պատուասսէ », և այլն: Ցիշեալդ Կարմիր-
գտակնի իցէ անշուշտ Գզըլ-պաշ կոչեցեալ տոհմն Պար-
սիկ, յոր անուն ցարդ ճանաչի ուրեք ուրեք 'ի Փոքր և 'ի
Մեծ Հայս, և ոչ է 'ի բուն կամ 'ի հասարակ ազգէն
Պարսից, այլ աղանդաւորք, օտարք և 'ի Թուրքաց: —
Երկամաւ յառաջ (1278) գրեալ էր Յովհաննու, և ըստ
մասին՝ ձեռամբ այլոց՝ միւս այլ աւետարան [4] «'ի վայե-
» լումն աստուածասէր իշխանին՝ Պարոն Սմբատայ, որ-
» դոյ հանգուցեալ և բարեպաշտ իշխանին Պարոն Կոս-
» տանդու՝ և հանգուցեալ մօրն իւրոյ Շահանդխտին, և
» հանգուցեալ եղբարցն՝ Պարոն Բակուրան և Պարոն
» Կոստանդ [5]: Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ
» սուրբ և ընտրեալ աստուածահաճոյ արքեպիսկոպոսին
» սուրբ Ուխտին Գռներոյն՝ Տէր Յոհաննիսի ». Ծաղ-
կող աւետարանին Վասիլ ոմն է: Բազում ուրեք 'ի լուս-
անցս մատենիս Նշանակէ Յովհաննէս զտարբեր ընթեր-
ցուածսն՝ ծանուցանելով, զի «Զոր գտանես 'ի լուսան-
» ցըն՝ ազգ է, և ոչ է պակաս, բայց յերկու տեղի ». և
երկիցս և թերևս աւելի անգամ գրէ, «զի 'յոյժ տագ-
» Նապիմ յուղղոյն գիտ ». կամ, «յոյժ տաժանեցայ
» յուղղոյն գիտ ». այսինքն յընտրութիւն լաւագունին
յայլևայլութեան բանից ինչ յօրինակս սուրբ գրոցն. այս-
պէս արարեալ է և Ս. Լամբրունեցին, և վստահօրէն
ընտրեալ, և զպակասորդ ինչ բառս կամ բանս՝ որ յայլ
թարգմանութիւնս գտանին՝ մուծեալ յիւրն: — Վերջին
ծանօթ ինձ մատեան ընդօրինակեալ խնամօք Յովհան-

Եւ տտրակայն՝ սխճակապք, յառեալք 'ի նա և կըճեայք:
Նոր Սողոմոն արքային գահաւորակն 'ի սմին,
Ցորոյ վերայ զննանի մարմին եւ արիւն Անմահին.
Մահացելոցս կենարարն, մեղուցելոցս քաւարան,
Եւ տարագրելոցս հաշտարան և 'ի գըլուխս յօդարան:
Այլ դու դշխոյ պաշտելի, բնաւից կուսից իսկուհի,
Ընկալ ըզքանս աղերսի և կարկառեա օրհնելի ... :
Արևելեանն այն մոգուց աստղահրաւէրն եկելոց՝
Հաւատ և յոյս մեր և սէր՝ գեր նոցայոյն քեզ նըւէր.
Մըսրոյն նըման երկնանման՝ յորում եդաւ Աստուած Բանն՝
Լիցին և սիրտք մեր արժան՝ լինել Նըմին օթարան ». և այլն:

1 Հանգոյն հօրեղբօրն և եղբայր Ֆիմեայ՝ [illegible] Լև-
ոն (Բ)՝ ընծայէր քեռն սիրելւոյ աւետարան մի չքնաղ, գրեալ հրա-
մանաւ Կոստանդնի կաթողիկոսի յամի 1249. յորում ճոխագոյն ևս
ծանուցանի, զի յամի իբր 1263, «Բարեփառ կայսերածին ծիրա-
» նածնունդ աստուածապահ քաղաքին Սախտոյ Տամ Ֆիմի, դուստր
» բարեպաշտ թագաւորին Հեթմոյ, յաղագս աստանեայական պատե-
» րազմացն՝ եկն յաշխարհս Կիլիկեցւոց, առ հայրն իւր և առ աս-
» տուածասէր եղբարքն, Պր. Լևոն և Պր. Թորոս, ուստերովք և
» դստերովք ... Եւ զի տրտմեալ էր Տամ Ֆիմէ՝ վասն վշտացն որ
» ժամանեցին Նմա, աստուածասէր եղբայր Նորին Պր. Լևոն ետ
» զաստուածախօս աւետարանս Նմա՝ 'ի մխիթարութիւն », և այլն:
Պատճառք վշտաց տիկնոջն են Նուազել տէրութեանն Սիդոնի, է
ինչ որ թշնամեաց բռնութեամբ, և է որ իւր իսկ առնն (Ցուլիանու)
վաճառելով օտարաց, ընդ որ ծանրացաւ ումն եղև Հայրապետ Նորա
Հեթում արքայ: — Երջանիկ պայազատք՝ որոց կարողագոյն սփոփանք
սրտի՝ էին մատեանք հոգեխօսիկք, այլ և գեղեցկազարդք, Նկարէնք,
և սրբազանից ձեռօք կամ հրամանօք գրեալք:

2 Ցէջմիածին յիշին (Թիւ 219) Աստուածաշունչ մատեան գրեալ
'ի Յովհաննէ, յամի 1288. միւս ևս (Թիւ 149) գրեալ վասն Նորա
յամի 1270. և Աւետարան գրեալ 'ի Նմանէ յամի 1287 (Թիւ 227):

3 Ի տան ազնուատոհմն Ապրոյեանց 'ի Զմիւռնիա պահեալ էր
երբեմն, ոչ գիտեմ թէ և արդ, այս մատեան:

4 Այս աւետարան պահի արդ յարքունի գրատան Մոնաքոյ մայ-
րաքաղաքի Պաւարիոյ:

5 Յաւագ իշխանաց և 'ի սոյն իսկ զարմէ թագաւորահօրն էին սո-
քա, որպէս վկայէ Պատմիչն թագաւորական, թէպէտ և յայն աւուրս
զՍմբատ, որպէս կոչէ և զայլս ոմանս 'ի Հայոց, վասն ծիսի ինչ կրօ-
նիցն: Տակաւին «տղայ գոլով հասակաւ», յամի 1263, ըստ Պատ-
մըչին մերոյ, առաքինացաւ սա 'ի մարտին Մանիօնի ընդդէմ Խորա-
մանին, և գովեցաւ և պարգևելով յարքայէն և յարքայահօրէն՝ սա-
քեցաւ առ մայրն և առ եղբարս իւր:

նու 'ի ձեռն երից գրչաց և յւրմէն իսկ յիշատակագրեալ յամի 1286, է Մեկնութիւն Աւետարանաց Ղուկասու և Յովհաննու, Յայտնութեան գրոց և Հանգստեան Յովհ. Աւետարանչի (արարեալն 'ի Ներսիսէ Լամբրոնեցւոյ)[1]. յորում ստորագրէ զինքն արքեպիսկոպոս, զի այլուր եպիսկոպոս գրէ. ստասնոր և վասն հօր իւրոյ « քրիստոսարեալ և ամեներջանիկ իշխանաց իշխանին և արքահաւեան ծերունւոյն՝ արքայահօր և Պարոնին Հայոց » Կոստանդեայ », ասէ՝ Մողոն կոչեցեալ[2], զոր այլուստ անգիտանայաք։ Թուի թէ մի յերից գրչաց իցէ Վարդան Բարձրբերդցի, զի է յիշատակ մի նորին 'ի մատենին, յորում ուսուցիչ իւր կոչէ զսոյն ինքն զՅովհաննէս։ Յետ երից ամաց գրչութեան մատենիս, այսինքն յամի 1289 եղեալ է վախճան արքայեղբօրս Յովհաննու Րաբունւոյ, ըստ համառօտ նշանակի ժամանակագրութեան միոյ. « ՉԼԸ. 'ի նոյնս, մեռաւ Տէր Յովհաննէս »[3], յետ ամենայն եղբարց իւրոց համահարց, զի համամարքն չեն քաջ ծանօթք։ Ոչ յիշի տեղի թաղմանն, թէ իցէ Գռներ կամ այլ վայր։ — Իսկ զաթոռս Գռներոյ յետ նորա կալան, որպէս վերագոյնդ յիշեցաք, Ներսէս յամի 1316 և Մխիթար 'ի 1341։ — Ի սկիզբն ԺԴ դարու, յամի 1303, յիշի 'ի Գռներ Մարտիրոս վարդապետ աշակերտ Գէորգայ Սկևռացւոյ, ընդօրինակելով Աստուածաշունչ մատեան մի, որ արդ պահի յԷջմիածին։

Արժանաւոր է յիշատակի և վարկի յետինն յիշեալ եպիսկոպոս՝ Մխիթար. զոր, քանզի չէր ծանօթ տեղի վանացն, նոր պատմահայր մեր Չամչեան՝ կարծեաց լինել 'ի Քռնայ Երնջակայ. ժամանակակից կաթողիկոսին և հակառակողն Ներսէս Պալիենց՝ Հռոմցի մականուանէ զնա, չգիտեմ զոր գաւառ յունական կողմանց իմանալով, և 'ի ռամիկ սովորութենէ՝ Տէր Միխիկ կոչեցեալ։ Խռովայոյզ ժամանակի հանդիպեցաւ այրն զգօն, յորում անդուլ մարտք Եգիպտացւոց արտաքուստ, խնդիր յաջորդութեան թագաւորաց մերոց 'ի ներքուստ, և կիսահայոց (Լուզինեանց) ունել զգահն, և ներքսագոյն ևս վէճք կրօնից և ծիսից՝ 'ի տագնապի կացուցանէին զերկուսին ևս աթոռս ազգին, և զվիճակեալսն ընդ նոքօք. վասն որոյ հարկ համարեցան իջուցանել զՅակոբ 'ի կաթողիկոսականէն, և ամբառնալ 'ի նոյն (1341-2) զեպիսկոպոս այս Գռներոյ. որ և անդէն 'ի սկզբան գահակալութեանն՝ ստիպեցաւ արքունուստ և 'ի յորդորմանէ Քահանայապետին Հռովմայ՝ ժողով գումարել 'ի Սիս, իբր երեսնից եպիսկոպոսաց և քսան վարդապետաց և վանահարց, և առնել երկար պատասխանի՝ խոհական և հանդարտ ոգւով, բազմապատիկ այլանդակ մեղադրանացն՝ որ սադրանօք Պաղոնն Ներսիսի համարի չարադրեալ 'ի 117 յօդուածս անյարիրս, յորոց շատք զզուանս իսկ ածեն ընթերցանելեաց։ Ստիպեցաւ Մխիթար դարձեալ երկիցս և երիցս առնել պատասխանի 'ի բացատրութիւն իւրոց և ժողովականացն բանից, և 'ի հերքումն զրպարտութեանց և մոլորութեան կարծեաց, անաչառ ընտրութեամբ ցորենոյն և որոմանց և որոմնացանից, անայլայլակ և արդարակորով երկայնմտութեամբ, որ շատ էր 'ի դասել զնա ընդ առաքինիս և վսեմականս. և թուի թէ մինչև ընկալեալ զարժանաւորն վկայութիւն և գլուծումն խնդրոցն, փոխեցաւ յաստեացս, յամի 1355. վերջին գտեալ 'ի վեհական կաթողիկոսունս մեր, և գրեաթէ վերջին կարևոր թղթակից ընդ վեհագոյն աթոռոյն Հռովմայ։ Թերևս ստուգագոյնս յայտնեսցէ ժամանակ զայս և զայլ գործս Մխիթարայ։

Իսկ մեք մինչև մեկնեալ 'ի սահմանացս Գռներոյ՝ ազդ արասցուք ապագայից տեղաքննաց, զ'ի վեր անդր նշանակեալն (յէջ 144) Ս. Նշան կայտեճի. որ՝ հովանաւոր յայտ առնէ ոչ խաչ մի միայն՝ այլ և եկեղեցի, և եկեղեցեաւն՝ զչէն ինչ որիչ 'ի Գռներոյ. և ահա 70 ամաւ յառաջ (1193) ծանուցանէ մեզ գրիչ հնագոյն աւետարանի զանուն դղեակն Կատեննոյ, և մերձ նմին զԱնապատն Պաւղոսական, ուր և գրէր զսուրբ մատեանն։ Ապա մերձակիցք են իրերաց երեքին տեղիքս, Գռներ, Կայտէն կամ Կատեն, և Անապատն Պօղոսական, և փափագելիք 'ի հետազօտութիւն։

## ԲԱՐՁՐԲԵՐԴ

31. Սահմանորդ վիճակին Մոլևոնի՝ որպէս ցուցաւ, և « 'ի Գահս Կիլիկիոյ՝ գաւառն Բերդին Բարձր ասացեալ », ըստ 'ի վեր անդր գրեալ բանից՝ Յովհաննու արքայեղբօր, և ըստ Վարդանայ աշխարհագրի, որ ասէ « զԲարձրբերդն մօտ 'ի Մոլևոն », հարկ իսկ էր և առ նմին նկատել զտեղիս զայս։ Զառաջինն հռչակեալ վասն ամրոցի միոյ՝ ըստ դրիցն մականուանելոյ Բարձր, ապա 'ի տարածանել և հաստատել տէրութեանն Հայոց՝ ընդարձակեալ սահմանօք՝ համարեցաւ ընդ գաւառս. բայց յաճախ երկոցուն ևս զուգախառնին յիշատակք, այսինքն բերդին՝ և որ շուրջ զնովաւ նուաճելոց կամ սեփականելոց տեղեաց. այսպէս իմանալի է և զբան թարգմանչի Պատմութեան Միխայէլի Ասորւոյ, յասելն զԴղեկէ « Բարձրբերդոյ, որ հայի հարաւով ընդ դաշտն Կիլիկիոյ » և 'ի ծովն Անդրիանու », (փոխանակ ասելոյ Միջերկրականի). որով գուշակի արդարև ըստ անուանն՝ մեծ բարձրութիւն և ամրութիւն բերդին, և հանդերձ այսուքիւք և հնութեամբն իսկ՝ ընդ նախակարգեան բերդորայս աշխարհիս դասել. նա և նախապատիւ՝ այնու, զի

1 « Ի Թվին Հայոց ՉԼԵ գրեալ եղաւ զսուրբ տառս երից գրչաց, ո- » րոց Տէր Աստուած ողորմեսցի. ամէն։ Որոց յայժ բաղձայի լուսալիր » մտաց սոցա և անսայթաք իմաստից, յար ընդ իս կալցի սակս. զորս » և 'ի մի տեղ հաւաքեալ, զՂուկասուն՝ յիգնատիոսէ, և զՅովհան- » նուն 'ի Նանան սարկաւագէ, զՅայտնութեանն 'ի Թեոփիլոսէ ե- » պիսկոպոսէ, զէջ ընդ եզբարն 'ի Ներսէս եպիսկոպոսէ Տարսոնի. » զի առձեռն պատրաստ ընաւին գտցի բանասիրաց և աշխատասէր » միր մշակացդ աստուածատունկն այգւոյ։... Աղաչեմ խնամ և » գութ և մեծարանս առնել սմա՝ իբր Աստուծոյ պատգամաւորի և » հոգւոյ ծնօղի. մի մերժել, մի պատառել, մի մերկ ընկենուլ », և այլ նման սոցին աղերսք։

2 Այլ նոր գրիչ Մողոն ընթերցեալ է զանունս։

3 Նոյնպես ինչ այլոյ մակագրական անուան սակս Տէր Յովհաննէս կոչումն, և այլ ինչ քաղաքական յիշատակք ժամանակագրին՝ յայտ հաւանօրէն զԱրքայեղբայրս ցուցանեն. թէ և սուղ ինչ երկբայս ածցէ Մովսէս վարդապետ Մեկնիչ ժամագրոց, որ յամի 1295 ասէ մեռեալ զխնդրող գրոց մեկնութեանն՝ Յովհաննէս Րաբունապետ, որ՝ ոչ գիտեմ սա իցէ թէ այլ ոք։

(եթէ ստոյգ իցէ աւանդեալն 'ի Կիրակոսէ՝ վասն նախապետի տերանց Կիլիկիոյ, Ռուբինի), յետ մահուան Գագկայ՝ « գնաց 'ի սահմանս Կիլիկիոյ արամբ միով՝ որսալ կաքաւս. և էր անդ բերդ մի զոր Բարձրբերդ կոչեն. և էր անդ եպիսկոպոս մի Հոռոմ. և եղև ծանօթութիւն առնն և եպիսկոպոսին... և եղև օր մի զի ամենայն պաշտօնեայք եպիսկոպոսին ելեալ էին արտաքս 'ի բերդէն, 'ի պէտս ինչ գործոյ իւրեանց. և էր եպիսկոպոսն միայն և սպասանի մի ընդ նմա. ելն այրն որսորդ հուպ առ բերդն որսալ կաքաւս. և տեսեալ զնա եպիսկոպոսին՝ ձայնեաց գալ առ նա և 'ի միասին ճաշակել. և նա ոչ հաւանէր. և էջ առ նա եպիսկոպոսն առանց պաշտօնէի. իբրև ... մտին 'ի ճաշել, և 'ի պակասել գինւոյն », առաքեաց եպիսկոպոսն զընկեր որսորդին 'ի բերդն. նա մի միայն սպասաւոր գտեալ անդ, « ելեալ 'ի պարիսպն նշանակեաց տեառն իւրում, եթէ Առ զբերդս. և սա աստէն 'ի ներքոյ խեղդեաց զեպիսկոպոսն. և ինքն մտեալ 'ի բերդ անդր՝ բռնացաւ, և առ սակաւ սակաւ աճեցոյց զկալուածս իւր », և այլն: Թէպէտ և զրոյցք թուիցին քան պատմական ստուգութիւն բանքդ, այլ հաւանելի է, զի թէ ոչ Ռուբէն՝ այլ ոմն այլ ոք ժամանակակից իշխան Հայ նուաճեաց զԲարձրբերդ. քանզի, որպէս բազում անգամ ազդեցաք, հաւաստագոյն պատմիչք ասեն վասն Ռուբենի՝ 'ի կողմանս լեռանց Փռուգիոյ տիրեալ նախ Կոպիտառայ բերդի և Կոռմոզոլի, որոց դիրք թէ և անստոյգք՝ այլ յանուանէ Փռուգիոյ գուշակին հեռագոյն լինել 'ի Գահուցս Կիլիկիոյ. իսկ Բարձրբերդ է ընդ մէջ դեռ տեղագրեալ Մոլևոնի յարևելից, և Սսոյ՝ 'ի հիւսիսոյ արևմտից, և որպէս թուի 'ի հովտի արևմտեան զուգակցին Սարոսի, այն է Զամանդեայ. զի և զհռչակելիս Բարձրբերդ, որ և առ պատմիչս այլազգեաց ծանօթ էր և կոչիւր Պէրպէրտ, մարթ է անծանօթ ասել այժմ. իբրու զի ոչ 'ի քարտս նշանակի և ոչ գիտնականի մերազգւոյ կամ օտարի՝ հանդիպեալ է նմին և տուեալ ծանօթս. վասն որոյ թողեալ սպագայից ստուգել զայսոսիկ, նշանակեսցուք զառ 'ի նախնեաց պատմական յիշատակս: -- Զոր օրինակ կեղակարծ ցուցաք զնուաճութիւն տեղւոյս 'ի Ռուբինէ Ա, նոյնպէս է՝ մանաւանդ թէ և ոչ ճշմարիտ՝ բնակութիւն նորին և առաջնոց պայազատացն յայսմ բերդի լինել, որպէս թուեցաւ ոմանց. այլ հաւանագոյն է ասել զսա տեղի պահպանութեան գանձուց նոցին, որպէս հաւաստէ Այուլֆարաճ Ասորի պատմիչ՝ ծանօթ և հիւր արքունեաց մերոց. և ստուգիւ յետոյ բազում անգամ եղև Բարձրբերդ ապաստանարան նոցին. և նախ Թորոսի Բ՝ 'ի գալ 'ի վերայ նորա Մանուելի կայսեր (1157-8), որ ասի իսկ « Պաշարեալ զնա 'ի դղեակն Բարձրբերդ կոչեցեալ. յարձակեալ ապա քաջն Թորոս 'ի վերայ ժողովոյն Յունաց, զբազումս եսպան և զյոլով սեւաստոսս գերի տարեալ 'ի դղեակն՝ վաճառեաց ընդ ոսկւոյ՝ կայսերն Էմմանուէլի, և զգանձն բաշխեաց իւրոց հետևակաց զօրուն »: Զայս բան 'ի չափական փոխեալ Վահրամայ, ասէ.

« Թորոսի 'ի Դղեակն ելեալ
Որ Բարձրբերդն էր ասացեալ,
Եւ ըզլերանց ըզկինրձն առեալ,
Հետևական զօրք լըցեալ:
Ցոր՝ իբրև զօրք Յունացն եկեալ,
Վաղվաղակի եղեն պարտեալ.
Ցորոց յոլովք ձերբակալեալ
Նա առ Թորոսն ածան կապեալ ». և այլն:

Բայց թուին աստանօր պատմիչքդ շփոթել զերկոսին գործս Թորոսի, և զերկիցս պաշարիլ նորա 'ի Յունաց՝ 'ի Մսիս և 'ի Բարձրբերդ. յառաջնումն դիպուածի՝ որ յամի 1151-2, ընդ յունակողմն իշխանաց Հայոց, Լամբրունեանց և Նաթանայէլեանց՝ գերի անկաւ և Վասիլ տէր Բարձրբերդոյ, որ և զոյգ նոցին թուի յազնիւ տոհմէ Հայոց, այլ ոչ է ծանուցեալ 'ի պատմութեան. իսկ բերդն թերևս յայնմ ժամանակէ հետէ նուաճեցաւ 'ի Թորոսէ, թէ և ոչ յիշի մինչև ցելս ԺԲ դարու, յորում ժամանակի Գէորգ ոմն էր տէր նորին կամ պահապան: — Ցայտ է և զի հանգոյն Լամբրունի էր և Բարձրբերդոյ աւան 'ի ստորև դղեկին, յորմէ ասի ընծայեալ 'ի վերջկոյս այնր (ԺԲ) դարու Կոստանդին կաթողիկոս Ա, որ յետ Ս. Սահակայ և փոքր Վկայասիրին՝ յերկարագոյն կալաւ զաթոռն, ամս քառասունևևօթն, և փոխանեցաւ յոյժ ծերացեալ. այլ զի յամանց Մալըխանցի կոչի սա, 'ի դէպ է խնդրել և յայս անուն չէն մի հուպ 'ի դղեակն անուանի: Առանձինն իմն խնամք սորա 'ի վերայ հայրենի կողմանցս՝ յայտնին և յուխտն Անդրիասանց, զոր 'ի ստորև յիշելոց եմք. և մի է յերից վեհից՝ որք զուգաժամանակ և յերկար խոհական տեսչութեամբ յուժի և 'ի չքի պահեցին զթագաւորութիւն աշխարհին Սիսուանայ 'ի բազմարկածեան ժամանակին, (Հեթում թագաւոր (1225=1270), Կոստանդին հայր նորա (1219 = 1263), և համանուն կաթողիկոս այս (1221 = 1267). և որպէս առ երկոքումբք առաջնովքն բազմապատիկ քաղաքական դէպք անցին ընդ արքունիս, այսպէս և բազում եկեղեցական դէպք առ սովաւ, և ծանօթութիւնք ընդ այլասեռիցն եկեղեցեաց, ընդ որոց գիտաց զգուշապէս քաղաքավարել: — Թագաւորահայրն այն առեալ էր, ոչ գիտեմ յորմէ հետէ, իբրև յիւր սեփական կալուած և նստոց՝ զԲերդս այս Բարձր, որպէս լուաք յորդւոյ նորա Յովհաննէ, և շինեալ ոչ հեռագոյն զգիւղն Կոստընդնոց. անդր չոգաւ և արքայն Հեթում՝ յայն ինչ դարձին 'ի Թաթարաց յամի 1256, « ուր էր հայրն իւր Կոստանդին և ուստերք և դստերք իւր, և ուրախացան յոյժ »: Թուի թէ վասն ամրութեան տեղւոյն իբրև զմի 'ի դրանց աշխարհին պահէր զայն խորագէտ և խնամոտ ծերունին. և ընդ հուպ ստուգեցաւ այնպէս լինել, թէ և դժնդակ արկածիւ, աւերանաց և հրկիզութեան մայրաքաղաքին Սսոյ, զորոյ ոչ զբերդն կարացին առնուլ Եգիպտացիքն և ոչ զԲարձրս այս Բերդ, որպէս տայ իմանալ Հեթում պատմիչ 'ի սուղաբան ժամանակագրութեանն, զարշաւանս նոցին « մինչ 'ի Բարձրբերդ » ասելով: — Ցելս կոյս այնր (ԺԳ.) դարու, եղերական գործ գործեցաւ 'ի սմա, որպէս 'ի Մոլևոնի՝ խարումն աչաց Հեթմոյ Բ հրամանաւ եղբօրն՝ Սմբատայ թագաւորի, և սաստ միւսոյ եղբօրն՝ Թորոսի՝ թաթարօրէն խեղդամահութիւն լարիւ աղեղան, ('ի 23 յուլիսի, 1299): — Զայնու ժամանակաւ հռչակիւր

գիտութեամբ Վարդան Բարձրբերդցի վարդապետ, զոր տեսաք յառաջագոյն աշակերտ լինել Յովհաննու արքայեղբօր․ և յայտ է ամենևիմբ զի սխալէին որք զմեծ վարդապետն Վարդան՝ զհեղինակ Պատմութեան և ըղձմեկնիչ Հնգամատենին և այլ բազում գրոց՝ ընդ սմա շփոթէին․ զի նա Արևելցի է և † յամի 1271, իսկ սա է Բարձրբերդցին, որ և յամի 1286 կոչէր զինքն աշակերտ Արքայեղբօրն․ այլ թերևս ցարդ շփոթիցին երկասիրութիւնք ինչ երկոցուն համանուանցն, և որպէս կարգ բանիս պահանջէ՝ նաև համաշնորհից․ այլ արդ գործ առանձին և ստոյգ ոչ ճանաչի երկրորդիս, և ոչ յիշեալն 'ի Ցակոբայ Նալեան, «Գիրք մի ճարտասանութեան, անուանեալ կիտ օրինականաց» հանդերձ «Համառօտ մեկնութեամբ», «Նման ոճիւ, խրթնապէս շարագրեալ»․ որ և կոչէ զսա «Վարդան Բարձրաբերդցի, այր իմաստուն և բանիբուն»։ — Իսկ ի սմին ժամանակի և գրիչ ոմն՝ որ ոչ յիշէ զանուն իւր, յամի 1299 ընդօրինակէր «Հուպ յանառիկ » դղեակս Բարձր կոչեցեալ», զԽոհքիոսի Մեկնութիւն Ցորայ, հանդերձ Նարեկացւոյ մեկնութեամբ Ով է զագլխոյն, զորոյ օրինակն՝ «մատոյց մեզ 'ի ձիր շնորհի՝ քահանայ ոմն Կարապետ անուն», ասէ գրիչն, այսու ձևով․

Յամի եւթնհազարերորդի քառասներորդի․ ութերորդում [illegible] հայոց աւարտեցաւ մեկնութիւնս [illegible] յայսմ ժամանակ և [illegible] զանազան գրչաւք ի գաւառս [illegible] կեցոց [illegible] Բարձրբերդ [illegible] ժամանակի յորում յոյժ զզուիլ [illegible] յանաւրինաց։ [illegible] ի սմանէ զերախտաւորս և զաշխատեալսն [illegible] Բարխարեւ [illegible]

Առ թագաւորութեամբ Լևոնի Դ, (1319-41), Բարձրբերդ էր 'ի ձեռս իշխանազանց տերանցն Նղրի, որք էին 'ի զարմից մեծին Կոստանդեայ արքայահօր․ և որպէս համարի՝ Թոռն նորա Պաղտին մարաջախտ՝ իշխանաց իշխան՝ նստէր անդ․ ուստի և յամին 1335 առաքեցաւ յարքայէն՝ ընդ Վասիլ Թղթագրի՝ առ Սուլտանն Եգիպտոսի, վասն պայմանաց հաշտութեան․ այլ ամիրայն Հալպայ Ալթուն-պուղայ՝ խաբէութեամբ կալեալ էարկ զնա 'ի բանտ, ուր և վախճանեցաւ յետ եօթն ամսոց․ յաջորդեաց նմա 'ի տէրութեան Բարձրբերդոյ՝ անդրանիկ նորուն՝ Կոստանդ, ծնեալն 'ի Մարիունէ դստերէ Լևոնի՝ որդւոյ Սմբատայ Գունդստապլի, և յետոյ թագաւորեաց Հայոց (1344=1363), և իւրով ձեռամբ գրէր 'ի ճաշոցի մայրենի նախահաւուն իւրոյ մեծի Գունդըստապլին, եթէ, «'ի թվականութեանս Հայոց ՉՁԷ » (1338) յամենանն աւգոստոսի ծե, սուրբ Աստուածածնի տաւնին, ծնաւ անդրանիկ որդին իմ Աւշին 'ի » Բարձրբերդ»։ — Այս բերդ է փարսիբէ, Pharsipee, անուանեալն 'ի Մանտըվիլէ՝ հռչակեալ բազմաշրջիկ ճանապարհագրէ Անգղիացւոյ, որ ուղևորէր յարևելս յերկրորդ քառորդի ԺԴ դարու, և քաղաք կոչէ ընդ իշխանութեամբ Կրուցի? (Cruk) ուրումն փարթամ իշխանի և բարւոյ քրիստոնէի։ Հաւանօրէն մնաց Բարձրբերդ յիշխանութեան Կոստանդեայ զաւուրս թագաւորութեան իւրոյ․ յետ որոյ վաղվաղակի 'ի վերայ հասեալ վախճանի թագաւորութեան Հայոց, լռեցոյց և զազգային յիշատակս բերդիս․ բայց թուի և յետ այնր ոչ միայն կանգուն մնացեալ՝ այլ թերևս և ընդ հզօր հայ ձեռամբ, որպէս և այլք ոմանք յանմատոյց բերդորէից Տաւրոսի և Գահուցն Կիլիկիոյ, անագան ուրեմն նուաճելոց յԵգիպտացւոց կամ 'ի Գարամանեաց, և կամ 'ի Զիւլգատրեանց․ 'ի սոցանէ Շահսուար՝ յամի 1467 նուաճեալ զմեծ մասն Կիլիկիոյ, զքաղաքանի և զբերդորայ, «յետոյ և զԲարձրբերդ», ասէ յիշատակագիրն։ Աւանդեն ոմանք յՕսմանեան պատմչաց՝ 'ի ձեռս Հայոց լինել Բարձրբերդոյ և յետ այսր թուականի, և իբրու յամի 1485 նուաճեալ նոցա․ զի ոչ միայն ազատօրէն կային անդ Հայք՝ այլ և նեղէին զանցորդս կողմանցն։ Մինչև ցԺԸ դար բնակեալ էր աւանն Բարձրբերդ, և լքաւ առ ահի աւազակաց, բայց տակաւին խնդրին հովիցք նորին յամառնային եղանակի։

Ցեկեղեցական տեսչութեան՝ յիշեցաք 'ի տեղագրի Մոլևոնի զի եպիսկոպոս սորին Յովհաննէս արքայեղբայր՝ տեսուչ էր «և մասին ինչ Բարձրբերդոյ»։ Ի սկզբան ԺԴ դարու յիշի Ստեփանոս եպիսկոպոս Բարձրբերդոյ՝ 'ի ժողովս Սսոյ և Ադանայ (1307 — 16)․ յետ նորա 'ի ժողովին Սսոյ առ Մխիթարաւ կաթողիկոսիւ՝ յամի 1342՝ Բարսեղ եպիսկոպոս։ — Այլ թուի ինձ թէ սոյն այս վիճակ և Անդրիասանց թեմն նոյն է․ զի մինչ հռչակաւոր բերդն ոչ յիշի 'ի թեմս յառաջ քան զԱրքայեղբայրն, յիշատակի Անդրիասանցն․ և յաւուր թագաւորութեան Լևոնի յետ ԺԲ դարու, եպիսկոպոս սորին էր Գէորգ անուն․ և առ Արքայեղբարբն իսկ յամի 1264՝ էր սորա, (իբրու միւսոյ մասին Բարձրբերդոյ) «ա» ռաքելաշնորհ եպիսկոպոսն տէր Պօղոս», որպէս կոչէ զնա Կոստանդին կաթողիկոս․ և թուի յաջորդեալ զնա Սիմէոն եպիսկոպոս, յիշեալ յամի 1269, 'ի նոյն վանս, զոր անկ է արդ քննել։

32․ Վկայեն յիշատակագիրք, որպէս գրող դեռ իսկ յիշեալ մատենին[1] յամի 1269, զի էր «Գերահռչակ ուխտս » Անդրիասանց մերձ յանառիկն դղեակ Բարձր անուն » կոչեալ»․ և վասն եկեղեցւոյն և սրբութեանցն՝ ասէ․ «Ի » դուռն սորա Սիոնի և կենաակիր և աստուածընկալ սուրբ » Նշանիս»։ Ոչ հասարակ մակդիր՝ այլ և յատուկ մարթ է գրել զկենսակիրդ՝ Խաչի տեղւոյս․ քանզի և յայլում յիշատակի՝ վաթսուն և աւելի ամօք զկնի գրեցելոյ (1331), վճռագոյն ևս ասի․ «Գրեցաւ եղանակաւոր տաւս որ կոչի Մանրուսումն... 'ի սուրբ Կ 'ի հռչակաւոր Անապատս՝ որ կոչի Անդրէասանց, ընդ հովանեաւ Սուրբ

[1] Որ է աւետարան մի, որոյ գրութիւնն սկզբնաւորեալ՝ 'ի Մաշկեւոր վանս, ուր և տեսցէ յետոյ, աւարտեալ է առս յԱնդրէասանցս ուխտ։

» Միոնի և կենաակիր սուրբ նշանի »։ Գրող սորին է կարապետ քահանայ վայրի մականուանեալ, ստացողն պատուական և սրբասէր Յովհաննէս քահանայ։ Իսկ առաջնոյն (աւետարանին) գրող է Գրիգոր կրօնաւոր վասն Ծերուն անուն քահանայի, « յառաջնորդութեան Տեառն » Սիմէոնի և այլ միաբան եղբայրութեանս ». և ողբալով իմն գրէ, զի սակաւուք յառաջ ականատես եղեալ էր մեծի սասանութեան և կործանման Սարուանդաւի և վանորէիցն. վասն այնորիկ, ասէ, « անտուն անտեղ » շրջէաք, ոչ ունելով տեղի հանգստեան »։ Ձեռնագրէ ընդ նմին և ոմն « Նուաստ Հերում-Ստեփանոս, սպասաւոր բանին Աստուծոյ »։ — Սակաւ ամօք յառաջ քան զայս՝ Կոստանդին կաթողիկոս շնորհեաց ուխտին Անդրիասանց՝ գեղեցկազարդ աւետարան մի, զոր յամի 1244 տուեալ էր գրել և նկարել Կիրակոսի ումեմն՝ 'ի Հռոմկլայ, գրելով 'ի նմին և վճիռ՝ զայս ձև օրինակի.

Ա յամերգիր հրամ
անիէկոստանդեած
առայիմ̄յննովարկա
Թողիկոսիաւ ՍՆայն
հայոց · որզաւետար
անսմեր զօրզր եղէնչ
ծախիւք · և ծաղկեր
անդ զարդարեցոսկո
վ և նրփն երփնգունի
զ ։ ևկազմեալոսկով
նարծաղթով ։ տուաք
իմ̄բովստնանդրիաս
անց սպառաք եղա · նոր
հեպիսկոպոսն տրա
ւ ռօս կամաւ եղե
ւորորդ ւոյն մերոյ թո
րոսի քահանայի ։ յի
շատակ մեզ և ծնող
այ մերոց

և յարէ 'ի բանսն. « Որ յամենայն ամի 'ի սուրբ Խաչին » ուխտարէքն առնեն ն պատարագ. մին հաւր իմոյ Վահրամա, և միւսն մաւր իմոյ Շուշկանն. երրորդն եղբաւր « իմոյ Գէորգեա քահանայի հաւր Թորոսի. չորրորդն միւս » եղբաւր իմոյ Գրիգորի. հինգերորդն Գրիգորի Նորին » որդոյն։ Եւ մի՛ ոք իշխեսցէ հանել զաւետարանս յայն » սուրբ ուխտին ժառանգութենէն. և որ հակառակի և » հանէ զսա, ընդ բանադրանաւք մնասցէ։ Այս եղև 'ի » Թվ. ՉՁԳ » (*)։ Ի հնագոյն քան զայսոսիկ յիշատակի Անդրիասանց՝ տեսաք զայն 'ի վեր անդր՝ յելս ԺԲ դարու՝ իբրև Թեմ եպիսկոպոսական, զԳէորգ ոմն ունելով տեսուչ. յորմէ յայտ է զի վաղու ևս հաստատեալ էր ուխտն այն, և որպէս Թուի յառաջ իսկ քան զնուաճել տեղւոյն 'ի Ռուբինեանց, ոչ գիտեմ 'ի Հայոց եթէ 'ի Յունաց. քանզի 'ի կողմանս յայսոսիկ լերանց Տաւրոսի եղև նահատակութիւն և ամփոփումն նշխարաց քաջայաղթ վըկային Քրիստոսի Անդրէի Զօրավարի և Բանակի նորին, որոյ տօն կատարի յամենայն եկեղեցիս, յ'19 օգոստոսի, ըստ Յայսմաւուրաց մերոց և ըստ այլոց։ Ի վկայաբանութեանն՝ որոյ գտանի և առ մեզ հին Թարգմանութիւն, յիշին ոչ սակաւ տեղիք ըղձալիք 'ի ճշգրտել, այլ զանխուլ մնացեալք՝ նա և 'ի սակս այլայլութեան անուանցն և անկարգ դասաւորութեան պատմութեանն, զէթ ըստ այժմու ծանօթ օրինակաց։ Արդ ըստ այսմ՝ 'ի մերում Թարգմանութեան ասի վասն Սրբոցն, ելեալ 'ի Տախսոնէ, « Եւ ճանապարհ կալեալ ընդ կողմն Տաւրոսի ... Եւ հասեալ 'ի Տարմնղինն և 'ի կողմ Եքսանի, և բանակեցան » 'ի տեղւոջն որ կոչի Քափսորիոս և Քարափարոն, 'ի դըժուարին վայրս, 'ի հովտի միում՝ 'ի մէջ լերանց, գետի » փոքու ընդ մէջ անցանելով։ Իսկ Սելևկոս պնդեցաւ » զհետ նոցա, և հասանէ 'ի Նեղուցս Քափսորայ, և պաշարեաց զնոսա »։ Իսկ լատին Թարգմանութիւնն [1] զառաջին տեղին ուր եկին 'ի Տարսոնէ՝ կոչէ Taxanite (Տաքսանեան), և Tamalme, որ է մերս Տարմեղինէ, և փոխանակ Եքսոնի՝ Orchesum բերդ, որ ըստ ձայնին յանգակից է Վօռկիս բերդի յիշեցելոյ 'ի Գունդստապլէն. բայց լատին (կամ յոյն) վկայագիրն ասէ զբերդն լինել 'ի Գաւառի Հայոց մերձ 'ի Մելիտինէ. իսկ զերկոսին յետին անուանսն՝ համաձայն մերոյս գրէ Chausorius կամ Capsurius և Charavatinum. յաւելու նա և զգաւառն անուն նեղուցին՝ Androcalon, Անդրոկալոն. և այսպէս ասէ կոչել տեղւոյն՝ վասն երկուց լերանց մերձաւորաց դէմ առ դէմ կալով գրեաթէ և յիրեար կցելոց, վըտակաւ լռկով անջրպետելոց։ Անդանօր եղև նահատակութիւն սրբոցն, ուր և բղխեաց աղբիւր բժշկութեան. և եկեալ Պետրոսի եպիսկոպոսի Տարսոնի և այլոց ընդ նմա, տեսին « զնշխարսն սրբոյ Բանակին, և ամփոփեցին » 'ի տեղի հանգստեանն անյայտաբար. և դարձան յիւ« րաքանչիւր տեղիս »։ Բայց բնագիրն ասէ ոչ դառնալ նոցա 'ի տեղիս իւրեանց 'ի Կիլիկիա, զի հալածիչն Սելևկոս զօրավար՝ կամէր ըմբռնել և զնոսա, այլ գնալ յի-

1 ... Exiit in locum qui dicitur Taxanite ... porro Andreas cum et e loco Taxanite discessisset, totum montem Taurum peragravit usque ad fines ejus regionis quæ Tamalme dicitur; cum venisset autem ad Castellum quod dicitur Orchesum, in Armeniorum provincia situm prope Melitinensium illustrem metropolim, pervenit inde ad Chausorii et Charavatinensium regiones ... Tum persecutor ille (Seleucus) cum id didicisset, celeriter venit ad locum qui dicitur Capsurius. Celeberrimus autem martyr una cum fidelissimis suis militibus secum versantibus properavit ad eam regio-

տաւրիա. յորմէ մարթ էր կարծել զգիրս տեղւոյն ընդ մէջ Գահոյն Կիլիկիոյ և Խաւրիոյ՝ կամ 'ի հիւսիս-արևմտեան դէմս լերանցն։ Իսկ Ցայսմաւուրք մեր զտեղի նահատակութեան Անդրիասանց՝ առեն «մերձ 'ի Վահկայն»։ Անուանք տեղեացն առաւել հայկական հնչեն քան յունական, և 'ի դէպ է կարծել թէ և անդստին յ Գ դարու բնակեալ էր անդ Հայոց. և ոչ է օտար իմն, զի չեն հեռի վայրքդ 'ի Կոկաց գաւառէ կամ 'ի Կոկիսոնէ, ուր յետ դարու միոյ՝ մեծն Ոսկիբերան՝ 'ի տարագրութեան իւրում՝ եգիտ ընդարձակ վիճակս Հայոց հանդերձ եպիսկոպոսաւ նոցին։ Հրապուրէի իմն և զերկոսին անուանսն՝ Քարաւատ կամ Քարապատ և Հաւձոր կամ Խլապձոր լըսել, և զվկայագիրն համարել հայազգի՝ այլ յունաբան, և գրուածոյն վերստին 'ի յունէ 'ի հայ փոխելով այլայլել անուանցն։ Ընդունելի ևս արդեօք իցէ զChausorius ճանաչել Խոզձոր. զի արդարև այսպէս կոչէր նեղուց վայրացն՝ մերձ յուխտն Անդրիասանց՝ ըստ վկայութեան կիլիկեան Պատմագրի մերոյ, յամի 1272, յորում «Թագաւորն Լևոն (Բ) հրամայեաց շինել ամրոց առ լերամբն » Տաւրոսի, հանդէպ քաղաքաղթ Ջաւրավարին Անդրէի » Պահարանիցն, կիսօրեայ ճանապարհաւ հեռի, 'ի » պահպանութիւն այնմ գաւառին և հռչակաւոր ճանապարհին Խոզձորոյ. որ և 'ի նոյն ամին յոր սկսաւ՝ » կատարեաց զնա. և անուանեաց զնա »...։ Ցաւէ զի դատարկ թողեալ է տեղի անուանն. նոյնպէս ոչ յիշի ո՛ րոշակի՝ որ իցէ այն գաւառն յորոյ պահպանութիւն կանգնեցաւ նորաշէն բերդն. այլ իմանի կամ նոյն իսկ լեառն Տաւրոսի կամ Պահարանքն Անդրէի, և կամ յանուն իսկ բերդին կոչեցեալ յայնմ հետէ շուրջ սահմանացն։ — Նաև ըստ այսմ հաւանելի է ինձ Լեւոնկլայ լինել բերդիդ նորոյ. ոչ միայն զի վայելուչ էր այնպէս կոչիլ յանուն շինողին, զոր օրինակ և Սմբատակլայն՝ յանուն հօրեղբօր նորին արքայի, և այլք, այլ զի և ոչ յիշի յառաջ քան զայս ժամանակ՝ յայդ անուն բերդ, որպէս արժանն պահանջէր յիշել, եթէ գոյր շինեալ 'ի մեծէն Լևոնէ կամ 'ի հաւոյ նորուն 'ի Պարոն Լևոնէ. և զի յիշատակագիր մի 'ի սկիզբն ԺԴ դարու (1302) հաւաստէ մեզ սահմանակից լինել զԲարձրբերդ և զԼևոնկլայ։ Նոյն համարիմ զկլայդ ընդ Լեւոն-Բերդի, զոր յետին յիշատակագիր ասէ վասն Շահստարի՝ այլովք հանդերձ նուաճեալ յամի 1467։ Ի տեղագրի վիճակին Զեթունի տեսցի զի գեօղ նորին Ալապօղան՝ Անդրիասանք կոչի ցարդ 'ի Հայոց։

53. Հպագոյն 'ի Լևոնկլայ քան 'ի Բարձրբերդ կարծեմ զմի 'ի հռչակաւոր և հին վանորէից Կիլիկիոյ՝ զկոչեցեալն Խորին Անապատ. զորմէ հաւաստաբար ասէ յիշատակագիր ոմն յամի 1302, գոլ «մերձ 'ի սահմանս » Բարձրբերդոյ և Լևոնկլային՝ անառիկ դղեկացն». զշինութիւն վանացն՝ հայր մեր Չամչեան ընծայէ Կոստանդնի Թագաւորահօր. մարթ է նորոգող կամ վերականգնող համարել, եթէ ստոյգ իցէ գրեալն 'ի Ցայսմաւուրս՝ զԳէորգեայ Մեղրկայ, հաստատել ոչ միայն 'ի Դրազարկ՝ զհսկումն կիրակամտից՝ այլ և «'ի Խորին Անա- » պատն՝ որ յաշխարհին Կիլիկեցւոց, 'ի Սիս». սակայն Մատթ. Ուռհայեցի և հետևող նորին Պատմիչն մեր՝ միայն զԴրազարկ յիշեն և ոչ զԽորին. վասն որոյ հաւանելի է յԺԴ դարու շինութիւն և պայծառանալ տեղւոյս. յորում՝ 'ի վերջին ամս Ա Հեթմոյ՝ Բասիլ ոմն կամ Վասիլ և Աստուածատուր եղբայր նորին՝ գրելով Ճառընտիր մի մեծադիր, առաջին առաջնորդ և առաջին հիմնարկող սուրբ ուխտիս կոչեն զՍտեփանոս, և մաղթելով վասն հոգւոյ նորա՝ ոչ շատ կանուխ ժամանակաւ ցուցանեն վախճանեալ. յետ նորա թուի կեցեալ Բարսեղ, որ «զօրինակս » (գրոցս) պարգևեաց, ասէ, և ինքն զկնի սակաւ աւուրց » փոխեցաւ յաստեացս. և էր առաջնորդ աստուածա- » բնակ ուխտին Խորնին»։ Քանզի պակասէ բուն յիշատակարան մատենին, այլ մեծութիւն նորին և հակիրճ յիշատակքն յայտ առնեն բովանդակ ամս տևեալ գրչութեանն. զի յէջ 341 նշանակի մահ Հեթմոյ արքայի (1270, հոկտ. 28) և յէջ 367-8 ասի. «Ցայսմ վայրի խաղաղութեան կարօտանամք յաղախնածին Հագարացւոց (յարձակ)մանէ». որ թուի նշանակել զեղեալսն յաւուրս Լևոնի Բ. այն ժամանակի առաջնորդ ուխտին որ և ստացող մատենին՝ էր Երիանոս, ընդ որում և Պետրոս զուգապէս կոչին Դիտապետք մենաստանիս. առ որօք և «Յովհաննէս կրօնաւոր և փակակալ սուրբ Անապատին » Խորնին ... որ օժանդակ եղև օրինակիս, և այլ միաբան եղբայրութեանն, որք բարւոք յօժարեցան վեր- » առացելոցս և ինձ ... Բասլի»։ Յիշին ընդ սոսին և «Աս- » տուածատուր քահանայ որ 'ի բազում կողմանց ջանայր » յօժանդակութիւն». կամ, «որ բնաւին սպասաւորէր

nem, quæ dicitur Androcaloni, ed in Tauri montis angustias se dejecit. Causam vero quare *Angustiæ* vocentur, ejus loci figura declarat. Duo enim montis juga vicissim sibi opposita, ac paulatim coeuntia, fere inter se copulantur: sed flumine (Պիւռամոս կարծէ ծանօթարարն) præterfluente distincta, angustias quasdam efficiunt, quæ fere inviæ sunt: hiatum vero præcipitem inter se habent, magnum illum quidem, et vel iis qui ipsum adspiciunt, terribilem. Hac de causa ejus loci situs talem appellationem accepit. — Acta S. Andreae Tribuni ac Sociis.

( * ) Կոնդակաձև յիշատակագիր կաթողիկոսին Կոստանդեայ որ 'ի հանդէպդ (էջ 150), և այլ միւս ևս յիշատակարան՝ այսպէս ցուցանեն զազգատոհմն նորին՝ ցչորս ազգ. յորոց վախճանեալքն նախ քան զամն 1254՝ նշանակին խաչանշանաւ †.



» Նուէթոց և ամենայն պիտոյից ». և Բարսեղ քահանայ « որ » յարդար ընչից իւրոց օժանդակեաց 'ի մատեանս յայս ». Տիրացու եպիսկոպոս՝ հօրեղբայր և ուսուցիչ գրողին, և Առաքել Նորին եղբայր. Առաքել կրօնաւոր « որ երբեմն » տեառնչ էր այսմ անապատի ». Կոստանդ ծերունի ճիւ-րատես, Թորոս և Գրիգոր՝ տնտեսք, Վարդ մանուկ պարտիզպան, և այլ ոչ սակաւ քահանայք, կրօնաւորք և սարկաւագունք. յորոց 'ի չար անկանի և Հիպա հոգևոր քոյր գրչին և մայր Խաչատրոյ սարկաւագի, և այլ կին մի անուն Շնոհաւոր, « որ 'ի չքաւորութենէ իւրմէ՝ մի անաս- » նիկ ունէր ծննդական, և զայն՝ վասն բարի յուսոյն իւ- » րոյ՝ յօգնութիւն ետ գրոցս » : — Ցոյցքան և յայսպիսի յիշատակս ոչ յաւելու և զորութիւնս ուխտին, զոր նախագրեալ յիշատակագիրն 1302 ամի՝ ծանուցանէ մեզ, զոլ « ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սրբոյն » Գրիգորի և սրբոյ Նշանին և այլ Սրբոցս ». գրողն այն է Թումա Համկլայեցի, որ յետ առման այնր կաթողիկոսական աթոռոյ յԵգիպտացւոց՝ և կոտորմանն բազմաց, ընդ որս և ծնողաց և հարազատաց իւրոց, խոյս տուեալ եկեալ այսր՝ տրտմութեամբ գրէր զգիրս Թղթոց միաբանութեան Հայոց և Յունաց: — Յառաջ քան զայն և յետ Երիանոսի՝ առաջնորդ եկաց ուխտին Կոստանդին Պրօնագործ Կեսարացին, յամի 1286 ամբարձեալ 'ի գահ կաթողիկոսութեան Հայոց, յաւուր Ճրագալուցի զատկին, յ'13 ապրիլի, և յետ չորից կամ հնգից ամաց (1290) բռնադատեալ հրաժարել. որ և յետ մերկանալոյ զքահանայապետական զգեստն և ծալելով դնելոյ 'ի վերայ արծաթի սեղանոյ, « ետ բերել մազեղէն մի սեաւ և » յայժ խոշոր և զգեցաւ, և 'ի նոյն մազեղինէն քուսի- » թայ եդ 'ի գլուխն, և ողջունեալ զամենեսին ել 'ի տա- » նէ եպիսկոպոսարանին միայն և լռիկ ». Թերևս դարձաւ այսր 'ի մենարան իւր յԱնապատն Խորին, մինչև կարգեալ տեսուչ Սկևռայ, ուր տեսաք զգործ նորա (յէջս 107-112), և ուստի վերստին կոչեցաւ յաթոռ կաթողիկոսութեան, և հովուեաց ընդ երկար ևս (1307-23): — Առ սովաւ 'ի ժողովս Սսոյ և Ադանայ յամս 1307-16, ընդ միաբանեալսն յիշի առաջնորդ Խորին Անապատի՝ Բարսեղ: Յետ սորա յամի 1319 հայր Կոստանդ, որ կոչէ զինքն « անպիտան և անիմաստ սպասաւոր բանի». այլ զի ասէ « յորժամ էի պաշտօնեայ սուրբ Ուխտին » Խորինին », թուի յետոյ հրաժարեալ. սա յամին յայնմիկ նշանակելոյ՝ ասէ կարգաւորեալ զՃաշոց Գունդստաբլին Սմբատայ՝ հրամանաւ Պապին Մարաջախտի ժառանգողի զնոյն, վերածելով զՏննդեան և զԱւետեաց տօնս՝ ըստ աւուրց լատինական ամսոց, և ըստ սահմանի ժողովոյն եղելոյ յաւուրս Նախայիշեալդ Կոստանդեայ կաթողիկոսի և Օշնի թագաւորի:

Յետ այսոցիկ մի անգամ ևս գտանեմ զյիշատակ Անապատիս յամի 1325, ընդ յիշատակի այլոյ մենաստանի 'ի նոյն կողմանս, այն է Փերձեր կամ Պերձեր. ըստ յետնոյս անուանագրէ Խաչատուր սարկաւագ գրիչ աւետարանի միոյ անդ՝ յամի 1299, վասն Սարգսի քահանայի եղբօր Պօղոսի կրօնաւորի. յիշէ և զՊօղոս քահանայ « որ աշխա- » տեցաւ յըղորդել սրմս » (մագաղաթին), այլ և զԴաւիթ և զԹորոս, որք թուին միաբանք. և զեկեղեցին Ս. Սիոն և Ս. Նշան: Յետ ամաց քան և վեցից ծանուցանէ այլոյ մատենի գրիչ, այսու օրինակաւ և ձևով, (և փոխանակ պիտակ կոչելոյ զինքն ապիտակ գրելով).



34. Շարակնոց գրեալ 'ի Փերձեր, 'ի թուին ՉՀԴ (1325):

Ի նմին մատենի գտանի այլուր գրեալ և այս յիշատակ. «Նրսատենեայ Հիրմբերգոյ Տէր ողորմեա, եւ ամենայն ուղիղ հաւատացելոց»[1]: — Յիշի և յամի 1342 ընդ ժողովականս Սսոյ՝ Դաւիթ հայր փերճերոյ, David Abbas de Perger, գրեալ 'ի լատինն. և զի անծանօթ էր անունդ յառաջագոյն՝ Զամչեան հայր մեր վրիպակ կարծելով՝ փոխեալ է 'ի վանք փրկչին:

Ոչ այս միայն վանք, այլ միւս ևս և 'ի նոյն սահմանս խորին Անապատի՝ շինեալ ասի 'ի Կոստանդնէ Թագաւորահօրէ, Միակեցեր անուանեալ. որոյ առաջնորդ համարի յիշեալ Հայրս մեր՝ զՍտեփանոս 'ի նմին ժողովի Սսոյ. բայց 'ի լատինն անծանօթ իմն անուն գրի վանացն *Quessedan* ?: Ոչ գտի 'ի գիրս յիշատակ ինչ զտեղւոյս. որպէս և ոչ զԼիսանկան վանաց, զոր՝ նոյնպէս ասէ Զամչեան՝ հաստատեալ Թագաւորահօրն, այլ ոչ նշանակի սահմանն, մօտ իցէ եթէ հեռի 'ի կողմանց Բարձրբերդոյ. իսկ ուր յետնոյս առաջնորդ կոչի Կոստանդին՝ 'ի նմին ժողովի, 'ի լատինն անուն տեղւոյն գրի Lisernat (Լիսեռնատ):

54. Վեհագոյն ոչ միայն քան զսոսին՝ այլ և քան ըզխորնի իսկ անապատն՝ գտանէր 'ի նոյն սահմանս և այլ Անապատ, Ականց անուանեալ կամ Ակներոյ վանք. զոր ստէպ յիշեալ բազմաց՝ ոչ նշանակեն զդիրսն. սակայն մի ոմն 'ի յետնոց՝ յամի 1326՝ ասէ լինել 'ի գաւառին Ցախուց կոչեցեալ. զայս գաւառ յիշէ և Պատմիչն Կիլիկիոյ, յասելն վասն Յովհ. Աղեքսի կայսեր՝ յամի 1137 նուաճեալ «զԱնարզաբա, զՎահկայն, զԱմայքն, զՑախուտն և »զայլ ամրոցսն». որով գուշակի յարևմտակողմն Ակներոյ լինել. և քանզի նոյն պատմիչ զգեօղն Ակներ ասէ լինել «առ ստորոտով Բարձրբերդոյ», յայտ ուրեմն է զի և Ցախուտ գաւառ սահմանորդ է նմին, որպէս Մոլեւոնն, այլ սա յարևմտից, իսկ Ցախուտ Թուի յարևելից և 'ի հիւսիսոյ. զի Կիրակոս Պատմիչ ասէ վասն վանացն, «Եզր էր տեղին այն», և համարիմ 'ի սահմանածայրս տէրութեան Հայոց: Յանուանէ գեղջն անշուշտ և մենաստանն կոչէր, և երկոքին իսկ Թերևս 'ի սակս ականց աղբերաց 'ի մօտոյ ուստեք բղխելոց. յորս հաճեցեալ արդեաք խորահայեացն Լևոնի Ա Թագաւորի, 'ի վեր քան զայլ բազում վանորայսն՝ զորս կարգէր, ըստ բանի պատմչին Կիրակոսի, «ընդ ամենայն կողմանս տէրութեան »իւրոյ, և բազմացուցանէր զպիտոյս նոցա», առաւել սիրեաց զայս դաստակերտ իւր. զի և զսա միայն առանձնորէն և յանուանէ յիշէ Պատմիչն, ասելով. «Յորոց մի »է 'ի վանորէիցն զոր կարգեաց նա՝ ճռչակաւորն Ակներ »անուն կոչեցեալ վանքն[2]. որ մինչև ցարդ ևս վարին նորին կարգադրութեամբ՝ զոր նայն կարգեաց. զամենայն »աւուրս շաբաթուն պահօք կատարել, այլ միայն լուծանել զշաբաթն և զկիրակին՝ ձկամբ... Զի յոյժ սիրէր »նա զայն վանսն, վասն բարիոք կարգաւորութեանն նոցա և հաճոյական աղօթից»: Զայս՝ անժխտելի ևս փաստիւ հաւաստեաց մեծն այն, 'ի կամելն՝ «զի յորժամ մեռանիցի՝ անդ տարեալ Թաղեսցեն զնա: ... Եւ հասեալ 'ի գեօղն Մրվանայ՝ անդ զտեղի կալաւ, զի տըկարացաւ մարմինն 'ի ցաւոյն»: (Ոչ հեռի 'ի վանացն համարելի է գեօղս այս, այլուստ անծանօթ, բայց Թերևս նոյն իցէ ընդ գրելումն Մավաիաւն՝ զոր յառաջն յիշեցաք (յէջ 148) իբրև հայրենիս Կոստանդնի Ա կաթողիկոսի Բարձրբերդացւոյ): Եւ «իբրև փոխեցաւ 'ի Քրիստոս բարի »խոստովանութեամբ, սահմանեցին այսպէս. զի հանցեն »զփորոտին և տարցեն յԱկներն, և զմարմինն տարցեն »'ի Սիս»: Ըստ փորոտեացն իմանալի է և սիրտն վսեմական, զոր և որոշակի յիշէ Կիրակոս. «Զսիրտն և »զփորն տարան 'ի վանքն Ակներ»: Եթէ չգոյր Ակներոյ այլ ինչ տեղի պարծանաց՝ մեծագոյն արդեաք էր այս, գողանալ 'ի կեանս և 'ի մահու զայնքան մեծ սիրտ. և 'ի վեր քան զամենայն բազմահոյլ դաստակերտս նորին և ամրոցս և ընդարձակ ծագս սահմանաց իշխանութեանն, լինել նմին արժանաւոր և մշտնջենաւոր պահարան:

Սեփական իմն շնորհք Թուին տեղւոյս կամ տեղաբնակացն, սփոփել զսիրտս մեծամեծս, որոց անբաւական գտանէին այլ վայրք. զի ահա և որ յետ Լևոնի վեհագոյն ընաւից գտաւ 'ի Թագընկալ պսակազատս՝ փեսայ նորին և յաջորդ, մեծագործն և մեծահոգին Հեթում Ա, յետ երկարամեայ բազմայեղանակ Թագաւորութեանն, զսաստկագոյն 'ի վերջէ կրելով կիրս, զանակնկալ պարտութիւն բանակին, զսպանումն միոյ յորդւոցն և զգերութիւն անդրանկանն, «բեկաւ սիրտն 'ի կարի և յանհնարին տըրտմութենէն՝ որ յանկարծահաս դիպեցաւ, և ոչ կարէր կանգնել զսիրտ իւր, մինչև եկն 'ի սուրբ և 'ի գեբուհաչակ ուխտն միանձանց, 'ի յԱկանց անապատն. »և աստ մխիթարեալ սակաւ մի 'ի միեղէն եղբարց սուրբ »ուխտիս, կեցեալ աւուրս ինչ, մինչ եկաւ Թուրքն յերկրէս»: Քանի՜ խորամուխք և աղէկտուրք էին հառաչանքն այն Հեթմոյ՝ 'ի նմարս սափորոյն՝ որ կրէր զսիրտ Լևոնի. — արդարև, ըստ խորհրդածութեան պատմչիդ[3], «զսիրտն (այն) ինքն և Աստուած միայն գիտէին, Թէ »որպիսի՜ կրակով լցեալ էր»: Թուի իմն Թէ և գաղտնի բաղդ սահմանեալ էր՝ ոչ հեռի 'ի ցամաքեալ սրտէ անտի մեծի նախորդին իւրոյ և աներոյ՝ աւանդել և ինքեան զիւրոյ սրտին յետին բաբախումն. քանզի աստանօր իսկ

[1] Առ դիւրութիւն ընթերցուածոյ լուսատիպ յիշատակարանին նախակարգելոյ՝ որ 'ի հանդիպակայ էջի (152) ընդօրինակեմք զնոյն հանգերձ յաւելուածովք. «Յամի եւթնհարիւր և եւթանասուն և »չորեքորդի Թուաբերութեանս Հայոց (1325) 'ի Թագաւորութեանն Հայոց Լևոնի որդւոյ Աւշին Թագ.: և ի կաթողիկոսութեանն Կոստանդեայ Լամբրունեցւոյ. գրեցաւ երգս այս չարականի ի ձորս խորին անապատի ի վանքս փերճեր: Ընդ հովանեաւ »սուրբ Սիոնի և սուրբ Նշանացս Քրիստոսի ձեռամբ սպիտակ և »ձեռով անուամբ քահանայի Կոստ: Ի խնդրոյ որբասէր և աղաւնատիպ ծերունի հաւրն Թուխանի: Ի վայելումն դեռաբոյս պատանեկին քեռորդւոյ նորին Պաւղոսի: Արդ աղաչեմ զամենեսեան »վասն սիրոյն Քրիստոսի յիշեցէք ի բարին Քրիստոս զվերոյգրեալս »այս զծերացեալ կրաւնաւորն Թուխան, և զբարեպաշտուհի քոյրն »Թանկ, և զծնողսն իւր զհանգուցեալսն ի Քրիստոս, զհայրն իւր »Անձրև և զմայրն իւր և զամենայն զարմն իւր: ... Ընդ նմին յիշեցէք զհեզն և զբարեբոյս միւս քեռորդին իւր Կիրակոս. նաև զողորմելի գերիս ծրագրաւղ ամէն Կոստ. և անմեղադիր լերուք զի »կար մեր այսչափ էր. և յընտիր աւրինակէ էր»:

[2] Նոյնպէս և Վահրամ.

«Զականաւոր ուխտըն կազմեալ
Որոյ՝ Ակներ անուն ձայնեալ»:

[3] Մաղաքիա Աբեղայ պատմիչ:

յԱկներ գեղջ՝ դիպաւ և իւր օրհաս մահուն, 'ի 28 հոկտ. 1270 ամի, թէպէտ և ոչ աստէն հանգուցաւ. այլ բարձեալ զմարմինն՝ տարան թաղեցին 'ի Դրազարկն. սակայն աստանօր կանխեալ՝ բարեաւ մնա ասաց աշխարհի, յառաջ քան զբնական մահուն՝ զկամաւորն տուեալ հրաժարական կենցաղոյս. ընդ մէջ արքունական ծիրանեացն և յետին պատանացն՝ արկեալ զիւրեաւ զկրօնաւորական սքեմ, և 'ի ճգնաւորական կոչումն Մակար՝ պճօղելով զյիսնամեայ հռչակեալն ընդ արևելս և ընդ արևմուտս Հեթումն անուն։ Այսպէս յետին նսեմ երկոցուն վեհիցն որք փայլեցուցին և բարձրացուցին զմիջոց ժամանակի բովանդակ հարստութեան ազգիս՝ յերկրին Սիսուանայ (պամս 85), յիրեար խառնեալ՝ զուգեալ գտան յայս մի կէտ անձուկ առանձնութեան, որ ինքնին իսկ արդ զանխուլ մնայ առ 'ի մէնջ. 'ի նոյն 'ի լռութիւն համակեալ և յետ նոցին այլոց աւագ մարդկան. յորս հուսկ վեհագոյն երևեցաւ և դրուատեցաւ յաշխարհի աստ Սիսուանայ՝ Պաղտին մարաջախտ և իշխանաց իշխան, յանդորրութիւն հայրենեացն նահատակեալ 'ի բանտի Բեբիոյ, ուստի և բարձեալ բերաւ հանգուցաւ ընդ աղօթանուէր հովանեաւ ուխտիս Ակներոյ յամի 1336։

Եկեղեցիք վանացս յիշին Ս. Աստուածածինն և Ս. Առաքեալք, յաւուրց Լևոնի Մեծի (1215). յորում ժամանակի յիշէ Պետրոս ոմն եղբայր Սիմեոնի՝ գրիչ ճառից Ս. Եփրեմի, «զսուրբ և զպատուական և զաստուածահաճոյ այրն զԹորոս, զԱկանց անապատի առաջնորդն», և երիցս երանեալ կոչէ, և զտեղին՝ գերահռչակ Անապատ. յորմէ գոյ գուշակել զի ոչ սակաւ ամօք յառաջ հաստատեալ էր. քանզի և երեսներորդ ամ էր այն իշխանութեան շինողին Լևոնի։ Ի վերջին ամս Հեթմոյ յիշելով բանասիրի ուրուք զգիւտ թարգմանութեան ներբողինի Ոսկիբերանին (կամ Թէոփիլոսի) 'ի Ս. Լուսաւորիչն, ասէ. «Համբաւ սորա իբրև զպսակազարդ թագաւորի՝ հասեալ 'ի յերկնանմանն սուրբ և աստուածաբնակ անապատն 'ի յԱկներն, առ լուսազգեստ սուրբ և երջանիկ հայրն Ստեփանոս, և նորա առաքեալ որակլս՝ և հրամայեաց գրել և աւանդել զսա 'ի դուռն սուրբ տաճարին Աստուածամօրն, 'ի պայծառութիւն տօնի մեր Լուսաւորչին և 'ի յիշատակ հոգւոյ իւրոյ»։ Զուսումնասիրութիւն սորա յայտնէ և ինքնագիր յիշատակարանն՝ իբր յամի 1273. «Ես նուաստս յամենայնի Ստեփանոս հայր Ականց անապատիս, ետու գրել ըզպատմութիւն Միխայէլի պատրիարքի Ասորւոց», և այլն. իսկ գրիչ մատենին Գրիգոր՝ աղաչէ զընթերցողսն՝ ասել, «Տէր Աստուած ողորմեացի Հօր Ստեփաննոսի առաջնորդի սուրբ ուխտի Ակներոյս և ամենայն ննջեցելոց իւրոց, ... փակակալ Վարդանայ, ... ամենայն գործաւորաց և սպասաւորաց սրբոյ ուխտիս, առաջնոցն և միջնոցս, այլ և վերջնոցն՝ որ գալոց են զկնի մեր, ... Կոստանդ և Սիոն քահանայիցն, և համաշունչ եղբարցն որ զթուղթս կոկեցին...։ Յիշեցէք 'ի Քրիստոս և զպատուական քահանայն զՅովհաննէս, որ զվերջին տետրս գրեաց, զի մեք էաք յոյժ տկար և անխել։ Յիշեցէք և զՀայր Թադէոս՝ զհայր Ակաց անապատին որ զօրինակս շնորհեաց»։ — Թուի առ վայր մի դադարեալ յԱկներ և արքայեղբօրն Յովհաննու, զի յիշի աւետարան մի իւրով ձեռամբ գրեալ նորա աստ յամի 1287։ — Ի վերջ կոյս ԺԳ դարուս՝ յամի 1293 գրեալ է ուրեք այս հակիրճ յիշատակարան. «Զսուրբ գիրս այս՝ զՍաղմոսաց մեկնիչս, Յոհաննէս Ճլուզ վարդապետ 'ի յիւր մահուն օրն՝ պարգևել էր Ակներոյ վանացս, իւր հոգոյն յիշատակ. Քրիստոս Աստուած հանգուցէ զիւր հոգին»։ Համարելով զՃլուզդ վանական Ակներոյ, յիշեսցուք և զմիակ ծանօթ մեզ գրուած նորին՝ տաղ մի սրտառուչ՝ յԵլս Ս. Լուսաւորչին 'ի Վիրապէն. որոյ սկզբնատառք տանց կազմեն Գրիգորիոս Լուսաւորիչ Հայոց. և սկսանի այսպէս.

« Գրիգորիոսի բազմաչարչար Սրբոյն՝
Զելն 'ի Վիրապէն՝ այսօր տօնեմք, եղբարք.
Բախձան ցընծութեան Հայաստանեայցս եղեն
Կուսանքն երջանիկք՝ յարևմըտից ծագեալ։
Իւծեալ մաշեցան հաւատոյ մանկունք,
Գերեալ ցըրուեցան յօտար ազինս ազգաց ...
Սըրբութեան խորանքըն հիմնարկեալք 'ի քէն՝
Աւեր ամայի կան խաւարեալ անբնակ.
Ուխտըք օրինաց և կանոնաց սահման՝
Խրամատեալ քակտին, աւրինազրեալքն 'ի քէն.
Րաբունական իմաստից հանճար՝
Նուազեալ պակասին յանբարեսէր բարուց.
Ի կարգս երկնայնոցըն վիճակեալ դասիւ՝
Անվարժք յիմաստից այսօր տիրեն հօտից ». և այլն.

և աւարտէ մաղթելով վասն այն ժամու կաթողիկոսին և թագաւորին.

« Յաթոռ տիրական քո ըզնստեալն այսօր՝
Հայցեա առ Յիսուս՝ մեզ լուսատու շնորհել.
Որդւոցս Արամայ՝ զպսակաւորն արքայ՝
Ի Հոգւոյն խնդրեսցես միշտ զօրաւոր պահել »։

Հաւանօրէն Լևոն Բ՝ (1270-89) էր պսակաւորն այն արքայ։ — Առ սովաւ և յետոյ ևս հռչակեալ և գերազանցեալ զայլովք երևի Ակներ՝ 'ի վարժս գիտնականս. քանզի առանձնօրէն զսա միայն յիշէ Գր. Անաւարզեցի 'ի թղթին առ Հեթում Բ (1306), թելադրելով նմա՝ կոչել «զեպիսկոպոսներն և զխորագէտս ?, և զԱկներոյն հայրերն, որ տանին ցուցանեն զայս գիրքս յիւրեանց վանքերն՝ պարկեշտ, կատարեալ և խելօք մարդկան»։ — Ի նմին ժամանակի (1307) 'ի ժողովի Սսոյ ընդ վանահարսն՝ յիշին Ակներոյ հայրն Սարգիս, և վարդապետն Վարդան։ — Յետ սակաւ ամաց (1313) Գրիգոր ոմն սպասաւոր վանացս, որպէս կոչէ զինքն, գրէր անդ զկցուրդս Ս. Եփրեմի, յաւելլով զհակիրճ և զոչ վայրապար յիշատակարանս այս. «Ի սոյն ամի սկիզբն արարաք շինման Բերդիս՝ որ 'ի Քարտիզկնոցն»։ Ոչ է յայտ որպիսի ինչ իցէ բերդն, այլ առաւել հետաքննելի էր պատճառ անուան տեղւոյն. Թղթարան արդեօք նշանակէր ըստ ռամկական իմաստի քարտէզ բառի՝ թէ այլ ինչ։ — Յամի 1325 ընդօրինակելով զմեկնութիւն թղթոյ ինչ Պօղոսի

յՈսկիբերանէ, նոյն Գրիգոր [1] (որպէս Թուի հաւանու֊
թեամբ), կոչէ զունան՝ «վանս գերահռչակ՝ որ կոչի Ա֊
» ռաքելոցն, և այլ բազմանոյլ վկայիցն». և յիշէ զա֊
ռաջնորդ «սուրբ ուխտիս Ակներոյ՝ զծերունի սուրբ վար֊
» դապետն՝ զտէր Վարդան, և զՍտեփաննոս հայրն, և
» զամենայն եղբայրութիւնս». ապա և զիւրսն յիշէ,
զհայրն Վահրամ, և «զչորեսին եղբարսն, զՍտեփաննոս
» քահանայ և զԱնդրէաս կրօնաւոր, և զՍարգիսն և
» զԹորոսն, զյառաջեալսն առ Քրիստոս. և զքեռին
» Սիմէոն երէց, և զորդին իւր զԿոստանդ քահանայ».
և այլն: — Ի միւսում ամի (1326) այլ գրիչ (Նարեկայ ա֊
ղօթամատենին), Ներովբէ անուն որդի Ներսիսի, այն որ
հաւաստեաց մեզ զգաւառ վանացս կոչիլ Ցախուտ, յա֊
ւելու և նոր սրբարան մի 'ի սմա, ասելով. «Ի հռչակա֊
» ւոր սուրբ անապատիս Ակներ կոչեցեալ, ընդ հովա֊
» նեաւ Սուրբ Տիրամօրն և Սրբոյն Յակոբայ, և այլ ա֊
» մենայն Սրբոց»: Ի դատարկ տեղւոջ թղթի միոյ մու֊
ծեալ է բանս այս. «Եւ ես Տիկնաց տիկինս՝ որ փոխե֊
» ցայ յաստեաց 'ի Քրիստոս, ետու գրել զգիրքս՝ յիշա֊
» տակ ինձ և մօրն իմ և կենակցին իմոյ. որ հանդիպիք՝
» յիշման արժանի արարէք և աղօթից պատարագաց»:
Տիկնաց տիկինն՝ Թուի Մարիւն մայր Կոստանդեայ Թա֊
գաւորի, վախճանեալ յամի 1352, որում և վայելուչ էր
դեգերել առ քնարանի առն իւրոյ Պաղտին մարաջախտի:
Ներովբէդ այդ քահանայ յիշի և յամի 1329 'ի վերո֊
յիշեալ գրչէն Գրիգորէ, որ գաղափարելով արդ զՄեկ֊
նութիւն Մատթէի յՈսկիբերանէ, մաղթէ յիշել «զմիա֊
» բան եղբայրութիւն հրեշտակաբնակ ուխտին Ակներոյ.
» զհոգևոր հարքն մեր, զծերունի սուրբ վարդապետն
» զՏէր Վարդան և զպատուելի քահանայքն զՍտեփա֊
» նոս փակակալն (վերոյգրեալքն), և զԳրիգորն և զԿոս֊
» տանդինն (ծերունի) զհեզահոգիսն, և զԹորոս ժառան֊
» կըն, որ 'ի վերայ ամենայն երախտեացն զոր արարեալ
» էին մեզ, յաւելին և զայս, և լցին զփափագ սրտի ի֊
» մոյ, և շնորհեցին զօրինակն՝ որ գրեցի զսա...: Եւ զյիշ֊
» ման արժանին զսուրբ քահանայն՝ զարեամբ նահա֊
» տակն զՎարդանն, որ բազում տառապանօք էր գրեալ
» զօրինակս, երիս օրինակս մերձ ունելով, և մեզ դիւր
» ճանապարհ էր կազմեալ»: Յիշէ և զայլս բազումս,
որպէս, Յովհաննէս քահանայ և եղբայր նորա «Մարտի֊
» րոս սարկաւագ որ զԹուղթս կոկեաց». Հոգևոր հար֊
քըն՝ Գրիգոր միակեաց և եղբայրն Մարտիրոս՝ եղբօրորդիք
Սամուէլի քահանայի արեամբ նահատակելոյ. «զորոց,
» ասէ, 'ի մանկութենէ զոհ էի, ևս առաւել այժմ, զի
» զտունս ետուն, որ հանգեայ 'ի գրելս, և յորդորող էին
» միշտ», որպէս և Ստեփաննոս քահանայն. և Վասիլ
մառնեպան, «զի և նա մեզ էր ողորմած». Կարապետ քա֊
հանայն, «որ զծայրս ճառիցն ծաղկազարդեաց». և այլ
քահանայք, Մարտիրոս՝ «որ զգիրքս կազմեաց», Կարա֊
պետ, Յովաննէս, Յոհաննէս միւս, Դաւիթ, Մինաս, Պե֊
տրոս, Պօղոս: — Յիշեալքդ յայսմ և 'ի Նախակարգեալ
յիշատակարանի գրոց՝ Գրիգորեանք՝ յիշին և այլ ևս ամօք
ինչ յետոյ, 'ի 1335. յորոց մին՝ «յառաջ ժամանակաւ
» ետ գրել զքաղաքավարութիւն աստուածաբան աւե֊
» տարանչին Յովհաննու, և զվարս սրբոյ հօրն մերոյ Յո֊
» հաննու Ոսկիբերանի, նա և զծովահանճար մեկնու֊



35. Մաշտոց գրեալ յԱկներ, յամի 1336:

[1] Նոյն յամի 1320 ընդօրինակէ և զՄեկնութիւն առ Տիմոթէոս Թղթոցն Պօղոսի, որ արդ պահի յԷջմիածին (Թիւ 1579):

» *թիւն սորա՝ որ զտասն Թղթոցն սրբոյն Պօղոսի. և զաս֊ » տուածաշունչ Քնարս Դաւթի մարգարէին, Ջեռնա֊ » դրութեան գրովն: Իսկ փակակալն Վարդան և վերա֊ » սացեալն Գրիգոր՝ խնդիր արարին յաղագս գրոյս այ֊ » սորիկ», կանոնաց ինչ մաշտոցի Ցունաց, զոր և ստա֊ նայ յիշեալդ Գրիգոր քահանայ՝ եղբօրորդի Անտոնի կու֊ սակրօն միակեցի: Իսկ վասն միւսոյ Գրիգորի ասէ, «Ծե֊ » րունւոյ քահանայի, հեզի և խոնարհի, որ հայրօրէ֊ » նաբար 'ի մանկական տիոց խնամէ զմեզ աստուածային » բանիւ»: Ջթուական գրչութեան մատենին ցուցէ լուսատիպն (յէջ 155): Ջմի յերկուց Գրիգորեանցն դար֊ ձեալ որոշակի Այներցի կոչէ, և 'ի խնդրոյ Նորին ամօք յառաջ (1332) թարգմանեալ է 'ի յունէ զկանոն վերա֊ դարձի յուրացութենէ՝ 'ի ձեռն Կոստանդեայ երիցու, յԱնդրուն գիւղ, որպէս ցուցցի սուղ ինչ յետոյ: — Ցետ տասն ամաց այսր յետին յիշատակարանի՝ ճանաչի 'ի պատմութեան ժողովոց՝ Յովհաննէս վանահայր Ակնե֊ րոյ, որ գտաւ ընդ այլոց գումարելոց առ Մխիթարաւ կաթողիկոսիւ: Ցետ այնր՝ հանգոյն նախասացուցեալ վա֊ նորէից՝ և հռչակեալս այս Ակներ՝ բարեկարգութեամբքն, այլ և գրասիրութեամբ, որպէս է խելամուտ 'ի վերջին յիշատակարանացդ;*[1]*, զանխլացեալ ծածկի համօրէն պաշտամամբքն և ընթերցուածովք, տրովքն և սրտիւն Լեռնի, և հեզամուոնչ տոչորմամբ Հեթմոյ:*

55. *Թէ ոչ կից այլոց եկեղեցեաց մեծի վանացս, այլ և ոչ հեռի 'ի Նոցանէ երևի գոլ՝ և մի 'ի բազմահոյլ վկայից տեղւոյն՝ 'ի վեր անդր յիշեցելոց, և քաջայաղթ վկայա֊ րանն որ կոչի Ձորոյն սուրբ Թորոս, ըստ Նորին յիշողի և բազմագիր Գրիգորի, որ յամի 1329 ընդօրինակէր յայսմ իսկ Ձորի գյիշատակաչատ զայն գիրս Մեկնու֊ թեան Մատթէի, որ 'ի ձեռին մերում է արդ, և որոյ այսու ձեւով է թուական գրչութեան.*

*Գրեցաւ ի թուականու-*
*թեան հայոց ՉՀԸ ի*
*թագաւորութեանն*
*լեւոնի աստուածասիրի որդւոյ*
*աւշնի, և կաթողիկոսու-*
*թեանն տէր յակոբայ,*
*ընդ հովանեաւ քաջայաղթ*
*վկայարանիս որ կոչի ձո-*
*րոյն սբ թորոս: ի ձեռս*
[illegible]
[illegible] *ամէն:*
*Ողորմեցիք սմա կարա-*
*պետ քահանայի ծնողաց*
*իւրոց որ զծայրս ձեռնցս*
*ծաղկազարդեաց:*

*Ոչ լոկ վկայարան՝ այլ և մենաստան ճանաչի՝ յարակից կամ բաժանորդ մեծի ուխտին Ականց. քանզի և առան֊ ձինն վանահայր յիշի սորա 'ի ժողովին Սսոյ յամի 1307, Թորոս անուն, փիլիսոփայ մականուանեալ, որ նշանակէ քաջ երաժիշտ կամ հմուտ երգոց, որպիսի էր և համ֊ անուն աւագերէցն արքունի՝ Թորոս Թափրոնց, և այլք ոմանք համանուանք: Առանց անուան սրբոյն՝ գրի և լոկ Ձորոյ վանք՝ 'ի յիշատակարանի ութեք 1334 ամի, և 'ի Նմին՝ կենակիր սուրբ Նշան վանացն, յայնժամ պահեալ 'ի Սիս: Ցառաջ քան զայսոսիկ՝ յերկրորդ կէս ԺԳ դա֊ րու յիշատակի Յովհաննէս Ձորովանեցի՝ երախտաւոր տեղւոյն, ուր Ստեփանոս ոմն գրէր զՑորդորակ ճառս Ոսկիբերանի վասն Յակոբայ կաթողիկոսի Ա (1268–86). և Յովհաննէս Նշանակէ զինքն ուղղիչ եղեալ գրոցն, իմա աղալանաց գրչին:*

*Ոչ հեռի 'ի սահմանաց կամ 'ի շրջանակէ Ակներոյ կարծեմ և զԹիւրքթի վանս. մի՝ զի գրիչ վերոյիշեալ յունական մաշտոցին՝ ասէ վասն այնորիկ, «Քրիստոս » Աստուած մեր տացէ բարի ժամանակաւ վայելել զգիրս » բնակչաց սուրբ ուխտին Թիւրքթոյ վանիցն, յորոյ պայ֊ » ծառութիւն՝ բարի յիշատակս կատարեցաւ. այլ մի՛ ոք » իշխեսցէ հանել զսա յեկեղեցւոյն, յինչ պէտս և իցէ». և երկրորդ, զի ոմանք յանձանց յիշեցելոց յԱկներ՝ յամս 1313–1329, յիշատակին և համազգոյգ 'ի գիրս Անդրիան֊ տական ճառից Ս. Ոսկիբերանի՝ գրելոց 'ի վանս յայս Թիւրքթոյ, յամի 1314. Վասինն այն մառնպան, հոգևոր հարքն Գրիգոր և Յովհաննէս, և գրիչն Կոստանդին, որ յիշէ և Նոր անձինս, որպէս զՍիր Թորոս հարազատ եղ֊ բայր երկոցուն դոցա. բայց զմին՝ զԳրիգոր՝ առաջնորդ ասէ այսր ուխտի Թիւրքթոյ, և զմիւսն (Յովհաննէս) փակակալ, որք ետուն գրել Կոստանդեայ զայն մատեան. և 'ի գործաւորաց՝ բաց 'ի մառնպանէն Վասլէ՝ յիշէ «ըզ֊ » Յովհաննէս ածպան (այծապան), զԹորոս հացխուր, » զԱնտոն աղօնման, զԿոստանդին հիւրատես»: Սրբա֊ րանքն յիշեալք են Ս. Աստուածածին, Ս. Փրկիչ, և կեն֊ սակիր սուրբ Նշանք: Գրիգոր առաջնորդ վանիցս գտաւ ընդ ժողովեալսն 'ի Սիս յամի 1310. իսկ 'ի ժողովին Ա֊ տանայ յամի 1316՝ վանահայր Թիւրքթոյ էր Հայրա֊* պետ*: Այլ ինչ յիշատակ ոչ գտանեմ զտեղւոյս:*

*Ցաւելից աստանօր և զաւանդութիւն հրաշախառն բերդի միոյ, զոր աւանդող բանին՝ ասէ մերձ լինել 'ի* Pharsipee, *Բարձրբերդ. Էր անդ, ասէ, ցին (հաւ) մի 'ի վերայ գեղեցիկ Թառի, զոր պահէր ոմն յաւերժահարսն գեղանի. և որ ոք հսկէր անախալ և կայր 'ի պահ հաւուն զաւուրս եօթն կամ երեք, շնորհէր Նմա բամբիշն ըստ սրտի Նորա բարիս երկրաւորս՝ որում և բաղձայրն. իսկ թէ ոք վրիպէր 'ի պահուն՝ և 'ի քուն մտանէր, զանձն իսկ կորուսանէր և անյայտ լինէր: Հսկեալ աղքատի ուրուք երբեմն զգուշութեամբ զսահմանեալ աւուրսն՝ խնդրեաց ընչաւէտութիւն, և տուան Նմա այնքան ինչք շահու վա֊ ճառականութեամբ՝ մինչև հազիւ բաւէր համարել զհա֊ զարերորդ մասնն: Ասպետ ոմն Տաճարական նոյնպէս*

[1] *Ցիշէ և 'ի ցուցակի Ձեռագրաց Էջմիածնի այլ և այլ մատեանք գրեալք յԱկներ, յորս և Ագաթանգեղոս մի հնաձև (Թիւ 1614):*

ժրաբար հսկեալ՝ մատոյց քսակ մի՝ լնուլ ոսկւով. եւլից բամբիշն և ետ, այլ գուշակեաց զի չարի լիցի առիթ այնքան լիութիւն գանձու՝ և նմա և կարգին իւրոյ, որպէս և եղև իսկ։ Եկեալ և միոյ 'ի Թագաւորացն Հայոց (Ermeny) առն լաւի և քաջ ձիաւորի, 'ի կատարել աւուրց հսկմանն՝ հարցեալ թէ զինչ խնդրիցէ, ասէ. Չեմ մեծութեանց ինչ կարօտ, զի են իմ կարի իսկ շատ, և երկիր ունիմ ընդարձակ և կեամ յանդորրու, և ոչ իմիք այլոյ ցանկամ՝ բայց քում անձին։ Խոժոռեալ բամբիշանն ասէ. Անմտութեամբ խնդրեցեր զոր չէ մարթ քեզ ընդունել. քանզի իմ խոստումն է տալ բարիս երկրաւորս, իսկ ես չեմ երկրաւոր ոք, այլ երկնաւոր և հոգեղէն։ Եւ 'ի յամառել Թագաւորին 'ի կամս իւր, սպառնայ բամբիշն և ասէ. Որովհետև չեղէ բաւական փոխել զքեզ 'ի յանդուգն և 'ի վայրապար բաղձանացդ, տաց զոր ոչն փափագիս՝ քեզ, և որ 'ի քէն գալոց են զարմք՝ ցազգ իններորդ. արդ գիտասջիր, ասէ, զի մարդք անդադարելիք պաշարեսցեն զքեզ, և եղիջիք կոխան թշնամեաց ձերոց և կարօտք ամենայն բարեաց։ Եւ յայնմհետէ, ասէ պատմիչն պարզամիտ, Թագաւորն Հայոց և երկիր նորա կորուսին զխաղաղութիւն և զմեծութիւն, և անկան ընդ հարկաւ Սառակինոսաց։ — Հեղինակ և հաւատացող բանիցս է Յովհան Մոնտըվիլ (Maundeville) ուղևոր և ուղէգիր անգղիացի յառաջին կէս ԺԴ դարու, որ յերկար շրջեալ յուխտս և յաշխարհս հեռաւորս՝ մինչև 'ի Թաթարս, գրեաց զոր ետես և զոր ոչն ետես, և շատ ինչ 'ի լրոյ և ըստ զրուցաց. և 'ի ստորագրելն զճանապարհ իւր 'ի Տրապիզոնէ 'ի Կարին, խոտորեալ գրչութեամբ յայս կողմն՝ զրուցէ զպատմիկ, և յաւելու նովին միամտութեամբ, թէ Չէ այս ուղղոյ ճանապարհ երթալոյ 'ի նախ նշանակեալ տեղիսս, այլ առ 'ի տեսանելոյ զսքանչելիս զայս. և ըստ բանիցն 'ի դէպ է անուանել զբերդն Ցընարբերդ կամ Բազէբերդ, Sparrow-hawk յանգղիացի գրութեան։

56. ԿՈԳԻՏԱՌԱ. — Ըստ դասաւորութեան բերդօրէից յարքունական Պատմչէն՝ ընդ մէջ Բարձրբերդոյ և Մոլևոնի կարգի Կոպիտառոյ բերդն, որ և միշտ այսպէս 'ի հոլովականն գրեալ, և ո տառիւ հաւեալ, ոչ գիտեմ թէ յուղղականն կոչէր և Կոպիտառ. զի առ առաջին յիշատակողի սորին՝ Մատթէի Ուռհայեցւոյ՝ գտանի ա տառիւ. «Կոստանդին որդի Ռուբինայ, որ ունէր զՏորոս լեառն 'ի յաշխարհին Կոպիտառայ՝ 'ի Մարապայ», և այլն։ Պատմիչդ փոխանակ բերդի լոկոյ առաջի առնէ մեզ յայդ անուն աշխարհ, և 'ի նմա գաւառ զՄարապա կամ Մարպա. նոյն և այլուր սահմանորդ ցուցանէ զդա Անաւարզայի. «Յայսմ ամի ասէ, որ է 1110, զօրաժողով արարին զօրքն Թուրքաց և մտին յաշխարհն Անաւարզայ, և աւար արարին զամենայն երկիրն և զՄարպայ». զնոյն բան և մերս Պատմիչ այսպէս զատուցանէ. «Մտին յաշխարհն Անարզաբոյ, և կոտորեցին զքրիստոնեայս գաւառին Մարպայոյ»։ Արդ ըստ առաջնոյն՝ գոգջիր նոյն իսկ են Կոպիտառա և Անարզաբա աշխարհ. իսկ Մարպա կամ Մարապա՝ ըստ երկոցուն եա՝ գաւառ մի Անարզաբայ. ապա 'ի դէպ է ասել, եթէ 'ի ԺԱ դարու և 'ի սկիզբն իշխանութեան Ռուբինեանց՝ ընդարձակ նահանգք և սահմանորդք էին սոքա, Անաւարզա՝ յարևելից, Կոպիտառա՝ յարևմտից հիւսիսոյ. և սմա նախ տիրեաց Կոստանդին որդին Ռուբենի. իսկ նախահայրս այս հարստութեանն՝ ոչ զայս բերդ, այլ զայլ՝ զրեաթէ զհամանուն միով տառիւ զանազանեալ՝ նուաճեալ ունէր, զԿոսիտառայ կամ Կաւսիտառայ բերդն. և հարկ է թէ որիշ տեղիք էին, զի ամենայն յիշողք կալուածոց Ռուբինի՝ Կոսիտառայ բերդ գրեն, ընդ որս և Վահրամ,

«Ռուբէն անուն ձայնեալ,
ԶԿոսիտառա ամրոց կալեալ».

և զի ըստ ցուցակութեան բանից նոցին՝ արտաքոյ Կիլիկիոյ՝ 'ի հիւսիսակողմանն և 'ի սահմանս Փռիւգիոյ էր այն։ Ցիշի և Կօսիտառցի խալ։ Դարձեալ, Կոպիտառն սուղ վանկիւ գրի (ո), միւսն՝ յաճախ երկբարբառիւն (աւ), (Կաւսիտառայ)։ Թողեալ արդ զսա 'ի զննուլ և հեռագոյն կողմանս Փռիւգացւոց, մատիցուք 'ի գրաւոր յիշատակս Կոպիտառայի, զի և սորա դիրք և այժմեան մնացորդք՝ անյայտ են առ 'ի մէնջ. այլ ըստ նախագրեալս նշանակի՝ ընդմիջասահման երևի Բարձրբերդոյ և Մոլևոնի, այլ և հաւասար 'ի Գահս Կիլիկիոյ, հիւսիսագոյն քան զնոսա. զի մի 'ի նախագրաւ կալուածոց Ռուբինեանց է, որք 'ի հիւսիսոյ ընդ հարաւ խաղացին աշխարհակալութեամբ. և իտալացի վաճառագիրն Բեկոլոդդի՝ զսահմանս Հայոց ձգէ յԱյասոյ մինչև 'ի Կոպիտառա. Թէպէտ և նոյն ինքն 'ի ճանապարհագրութեան անդ իջևանաց Կարաւանին՝ անընդմէջ կարգէ զերկոսին հանգոյցս՝ զԱյաս և զԿոպիտառա, 'ի ձեռագրի նորին գրեալ կամ ընթերցեալ Colidara։ Յայտ է դարձեալ 'ի յիշատակէդ՝ զի մի 'ի հին յունական կամ նախնի կիլիկեան բերդորայիցն էր դա, մեծ և ամուր և 'ի դժուարամատոյց վայրի, յոր սակս և անաղարտ մնացեալ ցվախճան պայազատութեան մերայոցս և անդր ևս. գուցէ և արդ ոչ իսպառ խանգարեալ։ Զկարևոր շնորհս սորա յայտ առնէ և աշխարհագիրն Վարդան, որ բազում բերդըս ասելով լինել 'ի Կիլիկիա, յիշէ միայն «զբերդն Կոպիտառոյ և զԲարձրբերդ մօտ 'ի Մոնլևոն»։ — Առաջին յիշատակ տեղւոյս յետ Կոստանդեայ Ա տէրութեանն, իբրև դարու միով յետոյ լինի, և դժխեմ դիպաք. այն է՝ արգելմամբն 'ի նմին մանկահասակ կաթողիկոսին Գրիգորի Ե, որ զի անլուռ աւագաց և անիմաստութեամբ վարէր, ամբաստանեցաւ առ Լևոն՝ մինչ չև էր սորա Թագ կալեալ. և հրամանաւ նորին երթեալ Յովհաննու եպիսկոպոսի Սսոյ՝ 'ի Հռոմկլայն, կալաւ խաբէութեամբ, եբեր և եմուծ 'ի բերդս յայս (1194). որ և նշանակի յայսմ պատմութեան՝ լինել 'ի քարաժեռի, և Քարն Կոպիտառայ կոչի յՈւռհայեցւոյն. ուստի հրապուրեալ 'ի հաւատարմաց իւրոց Հռոմկլայեցեաց՝ հնարել ելս, զի երիվար մատուցեալ զերծուսցեն զնա. «որոյ անկեալ 'ի բանս նոցա՝ մանկաբար, և առեալ կտաւ կախեցաւ 'ի գիշերի՝ իջանել 'ի բերդէն. և կտաւուն անկն բեկեալ պատառեցաւ. և անկեալ 'ի խոնարհ՝ բարձաւ մեռեալ». վասն այնորիկ և կոչեցաւ Քարավէժ։ Ժամանակակից ոք յիշատակագիր՝ 'ի պատմելն հա-

մառօտիւ զայս դէպս՝ Գղեակ Կոպիտառու կոչէ։ — Կոստանդին ոմն էր իշխան բերդին յայնմ ժամանակի, զի յիշի յետ սակաւ ամաց 'ի Թագաւորութեան Լեւոնի. որոյ յաջորդք անծանօթ են ինձ մինչեւ 'ի սկիզբն ԺԴ դարու, յորում 'ի ժողովի Սսոյ (1307) տէր բերդին հանդիսանայ Օշին։ — Ոչ միայն իշխանանիստ, այլ եւ եպիսկոպոսանիստ էր Կոպիտառայ բերդն կամ սահմանն, զի հաւանօրէն 'ի վանս ուրեք միձակին նստէր եպիսկոպոսն, այլ ոչ յիշի բնաւ ոչ վանք եւ ոչ այլ չէն 'ի նմին. մի միայն եպիսկոպոս ճանաչի, յիշեալն 'ի ժողովին՝ Սիմէոն անուն։ Իսկ բերդին յիշատակ անցանէ այսր եւս քան զկէս ԺԵ դարու. զի յաւերել Շահսուարայ զՍիս՝ յամի 1467, մի ոմն 'ի բնակչացն գրէ, « Նա մեք եկաք » 'ի Կոպիտառայ բերդն » ։ — Ընդ երկբայութեամբ յիշեցից աստանօր ըստ պարգեւագրի որ յանուն Լեւոնի Գ յամի 1307, 'ի կարգի քաղաքաց Կիլիկիոյ յետ Սսոյ, Մսսայ, Ատանայ եւ Տարսոնի հուսկ կարգեալ եւ զԿապեստրան, Capestran, ըստ իտալական հին պատճենի. եւ զի յայս անուն քաղաք կամ տեղի ոչ յիշի այլ ուրեք, գուցէ Կոպիտառ է սխալագրեալ, որ եւ 'ի մերոյ իսկ ազգայնոյ գտանի ուրեք թիւր գրեալ Կոճիտառոյ բերդ։

## ՄԻՋԱԳԵՏՔ ՍԱՐՈՍԻ

### ՋՈՐԱՀՈՎԻՏՔ ՋԱՄԱՆԴԵԱՑ ԵՒ ՍԱՌԱՆԻ

87. Միջին մասն հիւսիսակողման Կիլիկիոյ, կամ որ ինչ յարեւելս հիւսիսոյ է դեռ եւս տեղագրելոյ գաւառին Բարձրբերդոյ, եւ յարեւմուտս նահանգին Ջահանայ, միջոյն այն հիւսիսագոյն Տաւրոսի (Ալա-տաղ լերանց) եւ Անտիտաւրոսի, մթագոյն մնայ եւ 'ի պատմական եւ յաշխարհագրական ծանօթութիւնս. զի չէ յայտ ցոր վայր ձգէր ձեռն իշխանութեան Լեւոնեանց յայս կողմանս, եւ յորում մասին լերանցն էին առաջին կալուածք նախահարց Ռուբինեանց, մանաւանդ Նորին իսկ Ռուբինի. քանզի համարիմ աստանօր զնախ նուաճեալսն 'ի նմանէ՝ զԿօսիտառ եւ զԿոռոմոզոլ կամ Կոյոնոզոյա. յորոց յառաջ անցեալ Կոստանդին որդի Ռուբինի՝ եկն 'ի Վահկայ՝ 'ի ծանօթն վայր, 'ի վերջին հիւսիսային ծագս Կիլիկիոյ. զոր եւ համարին պատմիչք մեր սկիզբն իշխանութեան Հայոց յաշխարհիս Սիսուանայ։ — Արդ թողեալ առ յապայն զխնդիր թատեր գործոց նահապետի կիլիկեան պայազատաց Հայոց, նշանակեսցուք զսակաւ ինչ ծանօթութիւնս զսահմանացս յիշեցելոց. այն է՝ հարաւային մասն զուգակից առաջից Սարոս (Սիհուն) գետոյ. որք 'ի հեռաւոր ծագաց հիւսիսակողմանց Կապադովկիոյ՝ իջանեն զուգահեռական իմն ընթացիւք, սակաւ բացակայութեամբ յիրերաց, (առ առաւելն քան մղոն, եւ բազում ուրեք հնգետասան կամ նուազ եւս), անջրպետեալք 'ի պարուց լերանց, այլ ոչ անընդհատ յարակլցաց, որք եւ սկիզբն են Անտիտաւրեան մեծի լեռնագօտւոյ։ Զանազան անուանք են լերանցն՝ 'ի հարաւոյ կուսէ ընդ հիւսիս ձգելոց, սուղ ինչ ընդ արեւելս խոտորելով. հարաւագոյն լեառնն կոչի Կէտիմ պէլի?, իսկ գլխաւոր եւ միջին մասն՝ յանուն հզօր տոհմին Թուրքաց կամ Աֆշարաց՝ Քօզան, Քոզան եւ կամ Գոզան տաղ, եւս եւ Խօզան, որով ոմանք համարին արդ կոչել զբովանդակ հինն Անտիտաւրոս. բայց մեծ թեւ մի լերանց Քէրմէզ կոչմամբ, յորում կատարք 10,000′ բարձունք, ընդմիջելով զերկայնաձիգ պարն՝ ձգի ընդ արեւելս 'ի հովիտ Ջահանայ։ Ի հիւսիսոյ Քօզանայ մի ըստ միոջէ կարաձորովք զատուցեալք ձգեալ կան՝ Սան տաղ, Պէյ տաղ, Գզըլ տաղ. — երկոցուն յետնոցս թամբ անցիցն 1808 Ք. բարձր է, ըստ Չիհաչէֆի, որ յանցանելն ընդ այն յ'13 յուլիսի (1848 ամի) ձիւնացեալ տեսանէր զհարաւային կատար լերինն, յորում եղիտ եւ բրածոյ ժժմակս. — Քէսդէլ? տաղ, Տէտէ տաղ, Գարապուճար պէլի, Սօղան տաղ, եւ այլք, որք ձգին ընդ արեւելս կոյս Կեսարիոյ։ Ի միջակողման պարուն՝ թեւ մի եւս զուգահեռական ձգի՝ Գարբան տաղ անուանեալ, եւ յերկուցն միջի անձուկ ձորահովիտ է Սէյկուն գետակի՝ օժանդակի արեւելեան առաջից գետոյն։ Մեծագոյն եւս պար զուգահեռական տացին՝ ձգի յարեւելից կուսէ, այն է յահեկէ արեւելեան առաջիցն կամ ընիկ Սարոս գետոյ, յորում երկայնախոտըն Պիմպօա կամ Պինպուղա լեառն, 'ի հարաւոյ մօտ ունելով զՄառէն տաղ, իբրեւ ընդ երեսունեւհինգ մղոն ընդ երկայնութիւն. եւ երկոքին եւս պարքն միանգամայն՝ գործեն զԱնտիտաւրոս՝ տարածեալ գրեաթէ ցԱլիս գետ, ընդ մէջ աշխարհաց Բ եւ Գ Հայոց։

Արեւմտեան առաջք Սարոսի՝ կարճագոյն քան զարեւելեանն՝ կոչի Զամանդի (Ծամնդաւ), եւ բղխէ 'ի Գաւլէ տաղ լեռնէ 'ի Հս. Եւ. Կեսարիոյ, 'ի հովտին Թուրբան կամ Գուռնա օվասի, իբրեւ յ'2,000 Ք. բարձուէ. եւ ընթացեալ ընդ խորաձորս յոյժ երագասահ, ընդ Հր. Հր. Մ., ժամանեալ 'ի ծայր Ալա-տաղ լերանց՝ առ Ֆառաշ աւանաւ, եւ յառաջ անցեալ ընդունի զգետական իջեալս 'ի նոցունց, որոց գլխաւորք՝ Նախածանօթքն Գօրգուն եւ Զագըրտ. եւ ապա դարձեալ յարեւելս՝ մտանէ 'ի դաշտ, եւ ընդ մէջ սահմանաց Սսոյ եւ Ատանայ՝ խառնի ընդ արեւելեան առաջոյն։ Արեւելեանս այս գլխաւոր առաջք Սարոսի՝ Սարաւ սու կամ Սարիս կոչի, եւ երկարագոյն է. զի 'ի Հս. Ե. Զամանդեայ բղխէ՝ 'ի ստորոտից Խանգիր տաղ լերին, իբր քսան մղոնաւ 'ի հարաւոյ խաղից Ալիսեայ, 'ի Զըրըլըդ անուանեալ տեղւոջէ, եւ հոսեալ ընդ անձուկ միջոց երկոցուն թեւոց Անտիտաւրեան լերանց, խաղայ ընդ Հր. Հր. Մ., կտրէ զոստս Քէրմէզ լերին, եւ հուն բանայ ընդ հարաւակողմն Հաճնոյ, ընդունելով անդանօր յաջմէն զՍէյկուն գետակն կամ Քիզիլիգ սու, օժանդակաւ նորին Ուռուսիու վտակաւ, եւ այլովք եւս, որոց ձորակք կոչին Իճ-Տէրէսի, եւ Ճիմարքուր? (Dschimarkoure). ապա 'ի հիւսիսոյ առցին ընդունի զհաճնոյ ջուրն՝ որ եւ Զարպ-կօզ, եւ մտեալ 'ի դաշտ՝ կոչի այնուհետեւ Սիհուն. անցանէ ոչ շատ հեռի յարեւմտից Սսոյ, եւ ապա խառնեալ ընդ Զամանդեայ՝ նովին ուղղութեամբ ընթացից, Հր. Հր. Մ., կտրէ զբովանդակ դաշտն Կիլի-

կիոյ, և սակաւուք 'ի բացեայ յելից կուսէ գետաբերանոյ Կիւդնոսի՝ Թափի 'ի ծով. երկարագոյն գոլով քան զամենայն գետս Կիլիկիոյ, իբր երկու հարիւր երեսուն մղոն. այլ առաջին կէսն արտաքոյ է սորին։

Մինչև ցոր վայր ձորոց զուգաթև գետոյս Սարոսի՝ բովանդակէր իշխանութիւն Ռուբինեանց, և որում գաւառի սեփական էին վայրքս, ոչ գիտեմ. կարծեմ Բարձրբերդոյ, գէթ հարաւակողմանցն։ Այսպէս ըստ կարծ համարելով մինչև ցՀաճին ձգել զսահմանսն ընդ հիւսիսի, որ է ըստ այժմու աշխարհագրական քարտից ընդ 38° լայնութեամբ, նկատեսցուք ուրոյն զերկաքանչիւր գետառաջիցն հովիտս, ընդդէմ ընթացից նոցին խաղալով, 'ի հարաւոյ 'ի հիւսիս. և նախ զարևմտայնոյն՝ որ է Զամանդի, զորոյ տեսաք անձկագոյն լինել զհովիտն, վասն որոյ և սակաւ չէնք նշանակեալք 'ի նմին, ըստ Թերակատար քննութեան վայրացն։

Արդ յահեկէ գետոյս այսորիկ (Զամանդի) և յարևմըտից Կէտիմ պէլի լերին, ուր արօտք Սարգանդ օղլու Աֆշարաց, են տեղիք, Թախթա քէօփրիւ, Թերևս կամուրջ ունելով փայտեայ 'ի վերայ վտակի միոյ փոքու՝ որ անկանի 'ի Զամանդի, զի մերձ կայ նմին և 'ի վերայ ճանապարհի, Թէ և անընդմէջ 'ի վերայ ջրոյն նշանակի այլ գեօղ խծրի? անուն. առ որով վերագոյն ևս՝ են Մաաէրլի և Գարա քէօյ։ Աստի 'ի բնիկ ձորահովտի Զամանդեայ մինչև 'ի Ֆառաշ աւան՝ նշանակին գեօղք, Գալէ-քէօյ-Շէյխլի, յայտարար բերդի. Պաղչէճիկ, Թխիխի տէրէսի, Եէնի քէօյ, Աֆշար քէօյ՝ որ և գլխաւոր գեօղից կամ հանգրուանաց Աֆշար տոհմի. (քանզի և յՕսմանեան վիճակագրութեան՝ մի 'ի մանունց դեհից կողմանցս գրի Աշիրէթի-Աֆշար). Կիլլիօշ? — տէրէսի, Վերին և Ստորին Պէքեարի (զուցէ Պազըր), առ որով փայտեայ կամուրջ. Գարա քէօյ միւս. առ սովաւ ոչ միայն փշատենիս, և յակըրիս (Rhamnus petiolaris), այլ և այգիս խաղողոյ ետես Չիհաչէֆ (26 յուլիս, 1853). ուր և գլխաւորն Սարգանտը Աֆշարաց



36. Շահոքրամ փոփոխուն. Dianthus mutabilis. (Տես յէջ 160)։

հիւրընկալեալ զնա՝ ետ և գիր ընծայութեան առ ցեղապետ իւրեանց և գլխաւորն Քօզանեանց՝ Զաւըրճի Մէհէմմէտ Պէյ։

Յաջմէ գետոյն նշանակի միայն Ֆառաշ աւան, գլխաւոր չէն համանուն վիճակի, իբր յ'3300' բարձու, 250 տնակօք, 'ի խոժոռագեղ ձորավայրի. ուր նստի և միւտիր. յոլովագոյն մասն բնակչացն Յոյնք են խրթնաբարոյք, ըստ գրացեաց իւրեանց Աֆշարաց, յորոց չեգիտ յօժար ընդունելութիւն Չիհաչէֆ, որ երկիցս հանդիպեցաւ և ագաւ աստ, (25 սեպ. 1848, և 23 յուլ. 1853)։ Ազգաբնակութիւնդ յայտ առնէ լինել անդ մետաղից, և են իսկ երկաթահանք. Յոյնքդ Ֆառասոնի կոչեն զաւանն կամ զինքեանս (Φαρασόνη), այլ 'ի գիրս նոցին կոչի Ֆարասա (τὰ Φάρασσα), իբրև յանուն եկեղեցւոյ իւրեանց՝ նուիրելոյ սրբոց վկայիցն Բրիչ-յեսու և Յովհաննու եղբարց՝ նահատակելոց 'ի Պարսս, 'ի սկզբան հալածանաց Շապհոյ ('ի 24 կամ 'ի 29 դեկտ. 327 ամի), որոց տօն կատարի 'ի 29 մարտի. ընդ սոսա նահատակեցան և այլ

ինն վկայք, և երկուք 'ի նոցանէ կոչին Ներսէս և Սըմբատ. զվկայաբանութիւնն գրեալ է ականատեսն և ականջալուր Եսայի որդի Աբասայ՝ յԱրղնարգինէ Աղձնեաց. անշուշտ մասն ինչ նշխարաց Սրբոցն փոխադրեալ է այսր, այլ զորպէսն ոչ գիտեմ։ Նշանաւոր իմն է Յունացդ պաշտօնատարութիւն առ սարի Սուրբս, և 'ի դէպ է համարել զդոսա եկեալս՝ յետ փոխադրութեան այսր նշխարաց սրբոց վկայիցն. Թէպէտ և Ֆառաշացիքդ (Ֆարասիոդի) որք յստակագոյն խօսին զհելլենական լեզուն քան զհասարակաց ռամկականն, պանծան սերունդս լինել Յունաց Պելոպոննեսեայ. և ապաստանեալք 'ի դըժուարս լերանցս՝ 'ի միջի այլազգեաց՝ անխառն պահէին զաւանդութիւն և զբարբառ իւրեանց. այլ արդ 'ի նուաճել կողմանցս ընդ օսմանեան վարչութեամբ՝ խախտեցան և նոքա 'ի բնակութենէ իւրեանց։ — Մերձ 'ի Ֆառաշ և յեզր գետոյն՝ յապառաժ քարայրի կայ բերդ կըրկնապարիսպ. և հանդէպ նմին յայլում ապառաժի՝ ուխտատեղի Տիրամօր՝ 'ի քարայրի ուրեմն, յոր փայտեայ սանդղօք ելանեն, և լուսաղբիւր 'ի նմին։ Ի սկիզբն դարուս նշանակէին և այլ ուխտատեղիք 'ի մերձաւոր սահմանս, որք Թերևս և ցարդ պատուիցին 'ի Ֆառաշեայց. յորոց երկժամեաւ հեռի առ կամրջաւ միով մատուռն է Յովհ. Ոսկիբերանի, և առ երի աղբիւր յորդ քարավազ, այլ երկուց կամ երից աւուրց ընդհատութեամբ հոսելով։ Ժամաւ ևս վերագոյն յարևելից գետոյն՝ որ է յահեկէն, այլ ուխտատեղի՝ մենաստան Ընծայման Ս. Աստուածածնի, զոր յետ բազմաժամանակեայ աւերանացն՝ ասեն նորոգեալ յամի 1774։ — Ի վայրի բուսոց կողմանցս Ֆառաշայ և Հաճնոյ ընծայէ Չիհաչէֆ զպատկեր տեսակի փոփոխուկ անուանեալ Շահոգրամի, (Dianthus mutabilis. որպէս տեսանի յէջ 159)։

38. Երկրորդ և գլխաւոր առաջք Սարոսի, զոր և բուն գետոյն 'ի դէպ է ասել, Սառաւն կամ Սարրաւն, առնուլ Թուի զանունդ 'ի Սարրաւն երկայնանիստ լեռնէ, որ յելից հարաւոյ կայ կեսարիականն Թոմարզայ, և 'ի հարաւոյ ունի զՊէկտաղ լեառն. ընդ մէջ նոցին և Քաթրան լերին իջեալ Աչէուս կամ Աչաւս գետակ՝ օժանդակէ զՍարոս յաջմէն՝ 'ի ստորև Հաճնոյ։ Չեզերբ այսր գետակի նշանակին գեօղք Ճիմնիկ, որ հայկական իմն կրէ անուն, Եայլամըզ 'ի 1400 Զ. բարձու, և այլն։ — Յառաջ քան զխառնուրդսն 'ի Սարոս՝ ընդունի Աչէուս զվտակն Ուռումլու կամ Րումլու, յանուն գեղջ միոյ, որ յայտնէ զերբեմն բնակութիւն Յունաց. բայց յետին աշխարհահամար Օսմանեանց նշանակէ 'ի սմա 256 Հայազգիս և 937 մահմէտականս[1]։ Աստանօր բանակեցաւ առ վայր մի Իսմայիլ փաշայ յամին 1865՝ 'ի գալն յօգնութիւն Տէրվիշ փաշայի ընդդէմ Քօզանեանց։ — Վտակ մի փոքր ևս նշանակի 'ի Մտ. հարաւոյ խառնրդոց Աչէուսի, և 'ի հարաւոյ Քօզան լերանց՝ իջեալ և թափեալ 'ի Սարոս՝ յաջմէն, առ Ֆէյյիճ? գեօղաւանաւ և Էլմա տաղ լերամբ. չէնն Թուի գլխաւոր գոլ վիճակի միոյ, որոյ որպէսն ոչ է ծանօթ, այլ զի մերձ նմին կայ և գեօղ մի Ուռում-Եահիէսի[2] անուն, ըստ այլոց Խոռումզէ կամ Կէօրիւմճէ[3], որ և ըստ անուանն ցուցակութեան՝ բնակութիւն է Յունաց երկաթագործից տանց յիսնից (1859), 'ի 4100՛ բարձու լեռնոտին, 'ի պտղաբեր և մայրեոր սահմանի, մերձ 'ի յորդաբուղխ աղբիւր մի՝ որ հոսէ 'ի միջի արքակաղնեաց, և յերի Գարա-Սիվրի 4800՛ բարձր լերին։ Քօչի 'ի քննելն զվայրքս ('ի 11-18 մայիսի, 1853), ետես զարնանային ծաղիկք վայելչացեալ, մանաւանդ մանուշակաւ, յակնթաւ և հօրոտիւ, 'ի հովտացն մինչև 'ի գիծ ձեան. առանձինն նշանակէ զբոսորափայլ Առիւծագի (Orobanche), և զԼերկածաղիկն (Anaplanthus Biberst.), զնորատեսակ Քփամն (Orobus variabilis), և զսպիտածաղիկն Կամելինա (Camelina albiflora). բովանդակ միջոցն որ 'ի գեղջէս ցՊէլէն՝ այգեօք և Թփովք ծածկեալ էր։ Մերձ 'ի գեօղն երևին և հետք աւերեալ վանաց, զորս ոչ գիտէին բնակքն զանուն. մոռացեալք և զմայրենի լեզու իւրեանց՝ Թուրքարէն վարէին, նոյնպէս և 'ի զգեստս, բաց 'ի կապոյտ փակեղէն. մտերմութեամբ կենակցելով ընդ հայազգի բնակիչս Ախարձէ? գեղջ (Achartsche), որ ժամաւ հեռի կայ յարևմտից կուսէ, և ընդ Պաղչէձիկեայս։ — Ի հիւսիսոյ կուսէ գեօղիցս՝ յարևմտից յարևելս կոյս ձգի երկայնանիստ լեառն Ջօշ անուն (Tschosch) 7500՛ բարձր, յորում ծառոց անումն ժամանէ ց6600՛ 'ի հարաւակողման. 'ի դարևանդսն աճեն փիճիք և գիհիք և մայրք. 'ի գագաթանն եգիտ բուսախոյզն՝ տեսակս Շահթառակի, Մարեմ-ծաղկան, Խառածաղիկ միւռոնատերև (Ranunculus napellifolius), Գառնադմակիկ ոլիւմպեան, Եղինձամայր, Ակրկարհա, Եւնոմիա նման կոտմնտուկի (Eunomia iberidea), և մըրտատաղարթ Պարզծիլ (Haplophyllum)։ Գտան առնոքօք և գեղաղէշ Շուշանն (Iris iberica), կակաջք երփներանգք և Զամբիղ-ծաղիկ կամ Հօրոտ (Hyacintha orientalis)։ — Ի հիւսիս-արևելեան լանջս լերինն են հովիտք և սրօտք Կէօրիւմճէի. 'ի հիւսիսոյ լերինն ամբառնայ Պազըր լեառն (Երկաթահանից). իսկ յարևելից հիւսիսոյ կայ փոքրիկ գեօղն Սախաւն-տէրէ։

Ի գլուխ վերոյիշեալ փոքու վտակին կայ Քէրմէզ գեօղաւան, իբրև տասն մղոնաւ հեռի 'ի Մ. Հր. Հաճնոյ. և մերձ նմին յառապար երկրի 'ի գահաձև քարաժեռի՝ է մի 'ի քարանձաւ վանորէից Յունաց, զորս մէտէորա (μετέωρα) կոչեն, կամ մէդէօրոս (μετέωρος), բարձրայինս նշանակելով. և մեզ 'ի դէպ Թուեցաւ Քարավանս կոչել. չկան նոցա մուտք և ելք յայտնիք, այլ պարանաւ կախեալ կողով՝ իջուցանեն և 'ի վեր ձգեն զմենակեացսն և զանկասկածելի այցելուս. ըստ խրթնութեան տեղւոյն խրթին կենօք և տառապանօք կեան միանձունքն սակաւաւորք։ Յառաջ քան իբրև ութևտասն ամ՝ Փռանկ ոմն (Drée) ուղևոր՝ ելեալ 'ի քնին այսպիսի քարավանից՝ ընծայէ զտեսիլ սորին որ 'ի Քէրմէզ։ — Մերձ է 'ի սա և միւս յունարէնակ գեօղ Պաղչէձիկ որ և Կեավուր քէօյ՝ վայելչադիր և ռոսաւէտ, 'ի 1690 Զ. բարձու։ Յարևելից սոցին ընդ կողմն Աչէուսայ են և գեօղքն Կիւլլիւ?, Քէօ-

1 Նոյնպէս և Չիհաչէֆ յանցանելն ընդ այն յամին 1849, միայն զՅունազգիս յիշէր 'ի նմին։

2 Ըստ Ռուսայ աշխարհացուցի։

3 Ըստ Ֆիշէրի։

բունն առ գետեզերըն. ուր յամի 1865 ապաստան Եուսուֆ մի 'ի գլխաւորաց Քօզանեանց, զի նուաճեալ և գարձեալ ապստամբեալ էր. և յետ ամսոց հանեալ զօրկերան թաղեցին առ մզկիթ գեղջն։ Յետին աշխարհահամար Օսմանեանց աւելի քան զ500 բնակիչս մահմէտականս գրէ գեղջս, և 23 միայն Հայս։ — Ընդ մէջ սորին և Նախագրեալ գիւղիս Նշանակի Ճաղչիկ գիւղ. 'ի հարաւոյ սորին և ոչ հեռի' յաջմէ Սարոսի' Զիւանէ 'ի 1923 Ջ. մայրեար բարձու, բնակեալ յԱֆշարաց իբր 15 տանց, զորս և յետ ամենայն յաղթոյ' օգնեալք պնդեալս եաւս Զիհաչէֆ, առ ցրուութեան օղոց։ — Յեկից սորին' առ Սարոսի' է այգելէսա գեօղն Իշխէպարաճ 'ի 1210 Ջ. բարձու, ուր ընկալաւ զԶիհանչէֆ յամի 1853 (28 յուլ.) ահարկու ցեղապետ Քօզանեան Աֆշարաց' Զաորրին Մէհէմմէտ պէկ, և ետ նմա պահապանս զինեալս տանել մինչև 'ի Հաճին. 80 տուն Հայոց համարէր լինել անդ ամ 'ի մեբույց, յամի 1863[1]. — Ընդ մէջ երկոցուն յետին գիչեալ գիւղից' ամբառնայ քարալեառն, կոչեալ 'ի գաղա-



37. Քարափայտ Ցուեաց 'ի Քերմէզ յերինս. (էջ 160)։

թան բերդ' պարսպաւր և աշտարակաւր։ Այլ բերդի նշան տայ և Գեաւր եռէուի (Եերզաձոր) գեօղ 'ի ցամաքեալ ձորակի, յորում 40 տուն Հայոց նշանակէր նոյն մերազգի յամի 1863։ — Մերձ յանկիւն խառնրդոց Աչէռւոյ 'ի Սարոս, յերկոցուն եա յաջմէն' գետեղեալ է յերի փայտեայ կամրջին Պէլէն գեօղ, իբր 30 տամբք (յամի 1853), ուր ձմերոցք էին յիշեալ ցեղապետին Աֆշարաց. իսկ առանձին իշխող տեղւոյն 'ի բարձր ողեկի գեղջն' էր Ալի պէկ, յետոյ որդի նորա Էսամէր աղա, և սորա որդի Ահմէտ աղայ, որք անձնատուր եղեն 'ի Տէրվիշ փաշայ Օսմանեանց, յամի 1865[2]։ Թուի ոչ անծան տեղի լինել գեղջս, մանաւանդ եթէ առուգեալ և կանիշեն կամ կուանիշեն կոչումն, որպէս նշանակի յաշխարհացուցի տրեք, զոյգ ընդ Պէլէն անուան[3]։ Ի կրաքարուտ ձորակին նշմարեաց Զիհաչէֆ քարացեալ ժժմակս։

39. Նշանաւոր եա տեղի է յաշխարհին ամենայն Աչէռւոյ և յաջմէ Սարոսի, 'ի հիւսիսային ապառաժ բարձրաւանդակի 1190 Ջ. բարձու, և 'ի սորա անջատ քարաժերին, Վահկա, Baxá ըստ Յունաց, Ֆիէք կամ Վաքա ըստ այլազգեաց, անուր 'ի բնէ և յարուեստ[4]. խառն բնակութեամբ Աֆշարաց և սակաւ Հայոց, որոց տունս 100 գրէր Մուրատ Եփրեմեան յամին 1840, իսկ Պարտիզպանեանն' 200, յամի 1863. Զիհաչէֆ որ էանց ընդ Վահկա յամի 1853, ասէ 150 տուն ընդ Հայ և ընդ Աֆշար. բայց զարդիս' ըստ ծանօթութեանց Կիլիկեան ընկերութեան' 300 տունք են Հայոց։ Նա է առ մի 'ի ամրագոյն անուն տեղեաց Սիսուանայ, զոր վաղագոյն քան զայլս նուաճեցին Հայք, և մինչև ցարդ բնակեն 'ի նմին. քանզի ամենայն պատմիչք և յիշատակագիրք մեր' վկայեն յառաջ քան զայլ ամենայն կոչմանն' յամի 1097 կոս-

1 Գարաբէզդանեանն։
2 Տ. Պետրոսի Պատմութիւն Հաճնոյ. էջ 17։
3 Աշխարհացոյց Ոսաւոյ։

4 Վէմս է որոյ նկարեաս Ցայն պատմիչ, 'ի վերայ Ցուէն. Պերփեառամենի. Ἐφ' οὔπερ ἡ μὲν φύσις τὴν πέτραν ἀνέδωκεν, ἡ δὲ τέχνη τείχεσι περιέβαλε καὶ ἐκράτυνεν. — NICETAS.

տանդնի որդւոյ Ռուբինի «Նախ առեալ զբերդն Վահ-
» կայ, և ապա անտի յառաջ յոլովից տիրեալ». և ըստ
Վահրամայ՝

« Հռչակաւոր դղեկին տիրեալ,
Անուն որ Վահկայն էր կոչեցեալ.
Յորում և տուն ինքեան եղեալ,
Եւ տէրութիւն անդ հաստատեալ »[1]:

Իբրև զարմանաքանչ իմն յիշեն ամենայն պատմիչք
մեր զմահ սորին Կոստանդնի 'ի դղեկին Վահկայ, ըստ
դիպաց ինչ, որպէս գրէ և Պատմիչն կիլիկեան. «Յա-
» ռաջ քան զելանելն նորա 'ի կենցաղոյս՝ եղև նշան
» զարմանալի. զի ցոլացեալ հուր 'ի նմանութիւն կայ-
» ծակի՝ 'ի Դղեակն Վահկայն, և հարեալ զսկտեղն ար-
» ծաթի՝ տարաւ 'ի միւս այլ կողմ տանն, 'ի ներքոյ
» եօթն (այլ) սկտեղին. և ասէին գուշակումն մահուանն
» Կոստանդեայ. և 'ի նոյն ամի մեռաւ բարի խոստովա-
» նութեամբ 'ի Քրիստոս, և թաղեցաւ 'ի սուրբ ուխտն
» Կաստաղօն»: — Ժառանգ նորա և յաջորդ Թորոս Ա
յաւել 'ի վայելչութիւն տեղւոյն՝ զաւարն և զգանձ Ման-
տալեան իշխանաց Յունաց, 'ի նուաճելն զնոսա և զբերդ-
նոցին՝ ուր զԳագիկն արքայ Բագրատունի սպանեալ էին:

Երկար և բուռն պաշարման ժուժկալեաց Վահկա առ
եղբարբ սորա Լևոնիւ՝ յարշաւանս Յովհաննու Կոմնենու
կայսեր (1137). Թէպէտ և բազում անգամ հրեշտակս
առաքեաց սա՝ անձնատուր լինել՝ զի մի 'ի մահ մատնի-
ցին վրիժառութեամբ զօրաց իւրոց, այլ Հայոց վստահա-
ցեալ յամրութիւն տեղւոյն՝ ծաղր առնէին զբանիւք նո-
րա. մանաւանդ կրտսերիկն ոմն յաւագացն, այր ուժեղ
և հսկայ հասակաւ, թշնամանս ևս կսկծալիս դնէր կայ-
սեր՝ յունարէն լեզուաւ, և յոխորտանօք հրաւէր կար-
դայր քաջաց 'ի մենամարտ: Գումարեալ Յունաց՝ ընտրե-
ցին զԵւստրատիոս ոմն արի այր, 'ի մակեդոնական
գնդէն. որ և խրախուսեալ 'ի կայսերէ՝ մտեալ յոտս
քարաբլրին և ձայն ետ Կոստանդեայ. իսկ սա՝ «իբրև
» փայլակն յամպոց ոստուցեալ, ասէ Նիկետաս, կամ
» քօշ վայրի 'ի պուրակաց, գայր պուղել զԵւստրատ...
» առեալ ասպար սպիտակ հաւասարակողմն նշանաւ խա-
» չի 'ի կմբին, սուսեր յաջում, յաջ և յահեակ ածելով
» 'ի վահան Եւստրատեայ՝ անհնարին բարկութեամբ
» կրկնէր կոփէր, և համարէր զրաւել 'ի կենաց. մինչև
» անյոյս լինել կայսեր 'ի փրկութենէ նորին, այլ և ասել
» յանհաղորդելի մահ մատնեալ: Սակայն զօրքն՝ թէպէտ
» և տեսանէին զԵւստրատ անդուլ մղեալ 'ի Կոստան-
» դեայ, խրախոյս կարդային՝ հարկանել վիրաւորել զո-
» սոխն. քանզի ստէպ ամբառնայր նա զբազուկն և ամ-
» փոփէր առանց հարկանելոյ, 'ի զարմանս ամենեցուն,
» որպէս թէ յաներևոյթ իմն զօրութենէ ընկապձիլ բազ-
» կին կամ ուժաթափ լինել: Ապա ամբարձեալ միւսան-
» գամ զսուսերն, եհար ուժգնակի զմեծն զայն զասպար
» բարբարոսին (Կոստանդեայ)՝ զնմանակն Եկտորին, և
» յերկուս ճեղքեաց: Աղաղակ հիացման բարձին հոռմք.
» իսկ Հայոյն անպատսպար տեսեալ զինքն յասպարոյն,
» և զանգիտեալ վտանգել զգլուխն՝ 'ի դաշտավայրի ո-
» գորելով, երագ երագ 'ի բլուրն 'ի վեր վերջոտնէր». և
այնուհետև դադարեաց, ասէ, 'ի թշնամանելոյ զկայսրն
և զզօրս նորա: Հարցեալ կայսեր զԵւստրատ թէ ըն-
դէ՞ր բազում անգամ ամբարձեալ զբազուկդ և ոչ հար-
կանէիր զախոյեանն, ասաց. զի կամէր 'ի մի հարուած
և զասպարն պատառել և զվիրագն. և քանզի նա հեռի
յանձնէն ունէր զասպարն՝ ոչ յաջողէր այդպիսի հա-
րուած: (Թուի թէ ոչ յաջողեաց նմա և զհետ պնդիլ կի-
սաղէն ոսոխին): Յետ նուաճման բերդին՝ կալեալ կայ-
սեր զԿոստանդին՝ ետ կապել շղթայիւք և առաքել 'ի
Կոստանդնուպօլիս. այն ինչ մեկնեալ նաւուն յափանց,
յարձակեցաւ 'ի գիշերին վիրագն հուժկու՝ 'ի վերայ պա-
հապանացն, և զբազումս 'ի նոցանէ կոտորեալ՝ ետ ծա-
ռայից իւրոց արձակել զտնակապս իւր և փախեաւ. այլ
դաւաճանութեամբ վերստին ըմբռնեալ՝ մատնեցաւ 'ի
ձեռս զօրու կայսերն: — Ընդ Վահկայի յիշէ այլ ոմն
պատմիչ Բիւզանդացի (Կիննամոս), նուաճել կայսեր և
զԿապնիսկերտ, (Καπνισκέρτι), ամուր բերդ, որ ոչ գի-
տեմ զինչ տեղի իցէ, թէ չիցէ Կապանն[2]. պատմիչք
մեր ոչ զայս՝ այլ այլ տեղիս յիշեն, (Ամայք, Խալիճ, Յա-
խուտ): — Ոչ յետ բազում ամաց (1145) որդի գերելոյն
Լևոնի՝ բարեբաղդն և քաջայաղթ Թորոս Բ՝ զերծեալ 'ի
կապանաց՝ «հասանէր 'ի լեռնակողմն Տաւրոսի, 'ի սահ-
» մանս Վահկային... և իմաստութեամբ փոքր փոքր ձգէր
» առ ինքն արս յաջողակս... և օգնութեամբ Աստուծոյ
» փոքր փոքր տիրեաց հայրենեաց իւրոց. էառ զՎահ-
» կայն», և մի ըստ միոջէ զայլ ամուր տեղիս. յորոց մի
և Առիւծ բերդ, զորոյ ոչ գիտելով զդիրս և ոչ հեռի 'ի
վայրացս համարելով, յիշել աստանօր արժան համարե-
ցայ: — Այս Թորոս հաստատութեամբ նուաճեալ և զդաշ-
տակողմն աշխարհին՝ 'ի բարգաւաճ քաղաքանին որոնէր
իւր զահ իշխանութեան, հեռանալով 'ի նախանիստն
Վահկայէ. և յաջորդ նորա բռնակալող եղբայր իւր Մլ-
լեհ՝ թուի խոպան լքեալ զայն և բնակեալ 'ի Սիս: — Ա-
ռաջօք կեայր Ենովք ոմն Վահկացի գիտնական, որոյ ան-
գոսնեալ զհայրենի աւանդութիւնս՝ զՅունացն ընդունէր
ծէս, և կայր առ նոսա. թէ և յառաջագոյն գրեալ էր
«Նախատինք կարի ընդարձակս Հելլենացւոց ազգին»,
որպէս հաւաստէ Ն. Լամբրոնեցի՝ 'ի թղթին առ հա-
մանման նորին Ոսկան կամ Յուսիկ ճգնաւոր: — Յայտ
է զի յաջորդք Մլեհի՝ եղբօրորդիք նորա Ռուբէն Բ և Լե-
ւոն՝ 'ի Տարսոն և 'ի Սիս նստէին. և յայնմհետէ դը-
ղեակն Վահկայ տեղի կալանաց աւագ մարդկան կարգե-
ցաւ. ուր յելս ԺԲ դարու երկիցս արգել Լևոն զՀեթում
զեղբայր Ս. Ներսիսի, առեալ 'ի նմանէ զԼամբրուն. «և

1 Այսպէս գրէ և ընդարձակող ժամանակագրութեան Անեցւոյն. «Որ և տիրեաց հռչակաւոր բերդին որ Վահկայ կոչի. յորում զտէ-»րութիւնն իւր հաստատեաց. և նովաւ էառ զբազում տեղիս»: Իսկ զօրինակ նուաճման բերդին, ոչ ևս յիշեմ՝ որ պատմիչ, ասէ խա-բէութեամբ լինել. 'ի մեծի տօնի և տօնավաճառի տեղւոյն՝ առաքէ Կոստանդին արս ծպտեալս իբրև վաճառականս, որք 'ի խառն հրա-պարակին մերկացեալ զզէնսն թաքուցեալս՝ զիմեն 'ի ներքս 'ի բերդն և 'ի բուռն առնուն:

2 Այսպէս համարի և Տիւլորիէ, և համարձակի ընթեռնուլ Կապ-նից բերդ, որպէս թէ Կապանաց բերդ:

» Նա անդ զգեցաւ զգեստ կրօնաւորութեան. և գնաց Թա֊
» գաւորն առ Նա 'ի բանտն 'ի Վահկայն, և խնդրեցին
» թողութիւն յիրերաց. և ազատեաց զնա Թագաւորն »:
Սոյն ինքն՝ այսր « առաքեաց յարգելանս 'ի Վահկայն »,
և զառաջին կին իւր, լուեալ զնմանէ բանս բամբասա֊
նաց: Այսպէս սեաւշուք իմն պքօղեալ տեղւոյն՝ ոչ հան֊
դիստանայ յզկնիսն ընդ իշխանական բերդորայս կամ յար֊
քունիս. այլ յիշին յ'ԺԳ դարու գրիչք ոմանք Վահկացիք,
որպէս Ստեփաննոս քահանայ յամի 1280, Թորոս քահա֊
նայ՝ երեց կամ կրսեր քան զնա. և յառաջին կէս ԺԵ
դարու Կոստանդին կաթողիկոս Վահկացի, որ կալաւ զա֊
թոռն յամս 1430-8: — Ցայսմ ժամանակի թուի գրաւեալ
քահանայական տոհմի միոյ Վահկացւոյ, (որ և Թագա֊
ւորական՝ ըստ աւանդութեան Նոցին), զսրբութիւնս կա֊
թողիկոսական աթոռոյն, զչորեսին աջս (Լուսաւորչին,
Նիկողայոսի, Սեղբեստրոսի և զՊարսամայ), և ժառան֊
գութեամբ աւանդեալ որդւոց յորդիս, վասն որոյ և կո֊
չեցան Աջպանեանք, որպէս տեսցի յետոյ 'ի յիշատակի
կաթողիկոսացն Սսոյ: — Իսկ 'ի բնիկ սրբութեանց տե֊
ղւոյս՝ յիշի 'ի ԺԴ դարու Ս. Նշանն Վահկայի. այլ ինչ ոչ
գտանի 'ի գիրս: Բայց Ինճիճեան Հայր մեր աշխարհա֊
գիր 'ի սկզբան դարուս, ասէ. « Զանազան եկեղեցիք են
» 'ի սմա. Ս. Հրեշտակապետ, Ս. Թորոս, Ս. Մինաս, և
» Ս. Գէորգ, և մենաստան յանուն Սրբոյն Յովհաննու
» յաւարտ գեղջն. և վանք կիսաւեր, որոյ եկեղեցի յա֊
» նուն Սրբոյ Աստուածածնին, զոր Ներսէսի կաթողի֊
» կոսի ասեն շինեալ ». որոց որպէսն այժմիկ՝ չէ ինձ
ծանօթ: — Բայց մի յաւերակացս է անշուշտ զոր տե֊
սին Նոյնպէս յամի 1836 երկրաքնին կամ երկաթաքնին
Աւստրիացիք: Հուսկ յիշատակ Վահկայի 'ի գրոց՝ է ա֊
ռումն Նորին 'ի Շահսուարայ Զիւլգատրեան՝ յամի 1467:

60. Արժան է առ Վահկայիւ կարգել և զյիշատակ
Կաստաղօնի, որ թէպէտ և 'ի սկզբան պայազատու֊
թեան Ռուբինեանց մի 'ի կարևորագոյն տեղեաց կա֊
լուածոց Նոցին էր, այլ յապայն իսպառ զանխլանայ, որ֊
պէս և յայժմուս. և էր անդ անշուշտ ուխտ վանական
յառաջ քան զտիրապետել Նոցին, զոր և ընտրեցին
յիւրեանց հանգստարան. քանզի՝ և ըստ վկայութեան
Մատթ. Ուռհայեցւոյ, « էր մերձ 'ի յամուր բերդն որ
» ասի Վահկա, 'ի լեառն Տօրոս ». ուր առաջին տիրող
այնր բերդի Կոստանդին՝

« Արդ 'ի Քրիստոս հանգուցեալ,
Ընդ Ռուբենի հօրն իւր եդեալ,
Եղեն 'ի սուրբ ուխտըն թաղեալ,
Որ Կաստաղօն էր կոչեցեալ »:

Սակաւ ամօք յետ մահուան Կոստանդնի (1099), անդ
թաղեցաւ յամի 1105 և մեծ ճգնաւորն Մարկոս, որ վաթ֊
սունևհինգ ամս խոտաբուտ լեալ էր 'ի կողմանս Կոկաց:
Անուն տեղւոյն այսպէս գրի յամենայն պատմչաց՝ յա֊
ճախ օ տառիւ քան ո, միայն 'ի Ցայսմաւուրս ուրեք
գրեալ է Կսւրսաղաւն: Ըստ գրիցն մերձ վկայեալ Վահ֊
կայի, (որպէս և 'ի դէպ իսկ էր լինել, վասն չև ևս 'ի խո֊
նարհ ընդ հարաւ կոյս արկանելոյ զձեռն իւրեանց՝ իշխա֊
նացն թաղելոց 'ի Նմին), զարմանաց թուի յետոյ աթոռ
լինել եպիսկոպոսացն Անազարբայ, որ ոչ սակաւ փար֊
սախօք հեռի է 'ի Վահկայէ. որոշակի անուանէ արքունի
Պատմիչն յելս ԺԲ դարու « զԿոստանդին արքեպիսկո֊
» պոս Անարզաբոյ և առաջնորդ Կաստաղօնին ». Թէ֊
պէտ ոչ այլ ոք այսպէս յիշի յետ Նորա, բայց միայն Յա֊
կովբ եպիսկոպոս Կաստաղօնի 'ի կէս ԺԳ դարու, յորոյ
յորդորմանէ՝ վերնագրէ Մխիթար Սկևռացի՝ արարեալ
զբանն վասն պատրիարքական աթոռոց: Ոչ կարեմ ստու֊
գել՝ թէ արդարև հեռաւո՞րս այս վանատեղի՝ էր աթոռ
կամ կալուած Անաւարզեցեաց, եթէ այլ տեղի համա֊
նուն մերձ 'ի քաղաքն. քանզի և էին իսկ 'ի հնումն եր֊
կու Կասղաբալա, (Καστάβαλα), քաղաքք, մին 'ի մէջ֊
երկրեայս Կիլիկիոյ և թեմ մետրապօլտին Անազարբոյ,
որ յամենայն թեմագրաց Նոցին Նշանակի, և ճանաչի
արդ Գասդալ գեօղ 'ի Մ. Հր. Անազարբոյ, երկու կամ
երեք փարսախաւ հեռի. միւսն առ Տօրոս լերամբք, ոչ հե֊
ռի 'ի Տիանեայ. յետինս այս չէ անպատշաճ սահմանաց
Վահկայի:

Ի սոյն սահմանս յիշի 'ի մերայոցս Սինանըլը գիւղ 20
տամբք: — Ի հարաւոյ Վահկայի առ Պէլէնիւ գետակ մի
Նշանակի խառնիլ 'ի Սարոս յահեկէն (յարևելից), զոր
զսպէ 'ի հարաւոյ Քէրէս կամ Քիրէզ լեառն, յոր անուն
և գեօղ, և այլ քանի մի գեօղք յայսմ կողման, որ ընդ
մէջ է Սսոյ գաւառին՝ 'ի հիւսիսոյ, և Հաճնոյ՝ 'ի հարա֊
ւոյ, և սմին կարծեմ վիճակեալ: Մի 'ի գեօղիցն մերձ 'ի
լեառնդ յիշեալ՝ 'ի վերայ հասարակաց պողոտային որ
տանի յերկոսին քաղաքսդ՝ է գեօղն Թափան, կամ Թա֊
փան-օղլու, որում մերձ Թօփաքդաշ, հովտք և արօտք
Քօզանեանց, ուր տաւաղեալ էին յամի 1865՝ 'ի դիմելն
Օսմանեանց 'ի վերայ Նոցա: Մերձ 'ի Թափան Նշանակին
և Թէնքէրլի յարևմտից կուսէ, Թօքմաքլը? և Դաշ-քէօփ֊
րիւ 'ի հարաւոյ: Ի Թափան՝ աշխարհահամարն օսմա֊
նեան գրէ 267 Հայ բնակիչս, 726 մահմէտականս: — Փա֊
մուք ինչ վերագոյն՝ վտակ մի խառնի 'ի գետն, անցեալ
ընդ սօսաւէտ սահման, վասն որոյ և Սօսեաց գետ կամէր
անուանել բուսաբոյզն Քոչի, անցանելով ընդ այն 'ի
սկիզբն մայիսի (1859), և Նշանակէ ազգս ինչ հասարակ
բուսոց և սոճիս բերլիականս (Հալէպի). 'ի միջի Նոցին և
այգեաց՝ սփռեալ էին տունք գեղջ միոյ յաջմէ ջրոյն, և
այլ գեօղք մօտ և հեռի. առ որովք ամբառնայ լեառն
կրաքարուտ Ոսկուհան՝ Նշանաւոր անուամբ, որոյ սահ֊
մանք աղիւսագոյն կարմրահող են, և աճեն 'ի Նոսին քօշ֊
մորուք դափնետերևք երկոտնաչափ բարձրութեամբ,
զոր Գարա-բիչան կոչեն տեղացիք: Են 'ի Նոյն կողմանս և
լեռնարլուրք հրաբղխեայ կերպարանօք: — Մերձ 'ի գետ֊
եզրն (Սարոսի) է գեօղն Կէրէճիկ?, յորմէ ոչ հեռի կա֊
մուրջ փայտեայ շինեալ յՕսմանեանց 'ի ժամանակի ե֊
գիպտական պատերազմին, իբրև 50 Ջ. երկայն: — Իսկ
'ի հիւսիսոյ Պէլէնի և Վահկայի և յաջմէ գետոյն՝ գեօղք
Նշանակին Թիւշիւտիւ?, Դաշ-տիպի[1], Կէրզ, Կիւշլիւչէն.
'ի յետնումն՝ որ իբր երիւք մղոնօք ևեթ հեռի է 'ի քա֊
ղաքէն, ըմբռնեցաւ Եուսուֆ Քօզանեան ապստամբն

[1] Ի Ռուս աշխարհացուցի՝ գրի Դաշ-թիգի, ташц сизи.

(1865), մինչ եկեալ էր ապստամբեցուցանել զգիւղականս, և դաւեցաւ 'ի նոցանէ։ — Ցելից սոցա և գետոյն եւ' է Հուռ կամ Քուռ գիւղ, ուր դադարէր ցեղապետ Գարսանտըլը Աֆշարաց' Սամուր կամ Սամարա պէկ, ձմերոց ունելով զՊէլէն, յամի 1836, 'ի գալ 'ի քննութիւն կողմանցս Ռուսէկէր երկրագէտ սպայի (11 օգոստ.). յայց եւ նմա և Գեսիկ տեղագիր' 'ի նմին ամի սակաւուք յառաջ (22 յունիսի), մերձ 'ի սոյն սահմանս. զորս և յոյժ գեղեցիկս ասէ և բարգաւաճ' պէսպէս ծառովք մայրեաց և սօսեաց, և 'ի լերինսն քարացեալ խեցիս. էանց և ընդ անձուկ ձորակ մի' յորոյ պահպանութիւն կանգնեալ էր բերդ 'ի բարձու, այժմ աւերակ, բայց տակաւին մնային կամարքն և այլ մասունք շինուածոց։ Այլ ճոխագոյն եւս է գետին կողմանցս կրաքարուտ, օձաքարուտ և արդեսեան, 'ի Հուտայ մինչև 'ի սահմանս վիճակին Սսոյ, երկուստեք գետոյն, մետաղեայ բերովք, այն է երկաթով, վասն որոյ և Պազըր օվասը կոչի (Երկաթահովիտ), զոր 'ի վաղուց հետէ բրէին և հանէին բընակիչք կողմանցն. և ըստ գուշակելոյ մեծի աշխարհագրին Ռիդդէրի, անդստին յաւուրց հայկական հարստութեան, 'ի հանից աստի հարկելով առ Եգիպտացիս (ըստ դաշնադրութեանն Պիպարսայ և Լևոնի Բ, 1282), ամի ամի' 1000 տախտակս երկաթեայս, բևեռս, և այլն։ Ի վերոյ նշանակեալ տարւոջ 'ի կէս օգոստոս ամսեան' Աւստրիացի երկրագէտքն Կէնսպէրկ և Սլապէյ առաջնորդութեամբ Ռուսէկէրի քննեցին զմետաղսն, և գտին առ Գոււկէյի գիւղիւ մերձ 'ի Հուտ' յԵլ. Հր., ուր և հին աւերակք էին, եւս և առ Վահկայիւ, առ Պէլէնիւ, առ Խնկրթէփէսի (Կովասար) գիւղիւ մերձ 'ի Ֆէյլին աւան, առ Ուռում-Նահիէսի, և առ Ախարչա գիւղիւ. այլ և 'ի հարաւոյ Ֆառաշայ' առ Թիփի-տէրէսի գեօղիւ. են և յաջմէն (արևմտակողմն) Ջամանդեայ, ընդ մէջ Նորին և ստորոտից Ալա-տաղ պարու, ուր և Պազըր տաղ լեառն. գոն այսպիսի մետաղք և յանուանեալ ձորակս Ին-տէրէսի և Կիլիոշ-տէրէսի. են և 'ի հարաւոյ սոցին 'ի գլուխ վիճակին և գետոյն Սսոյ' հարուստ երկաթահանք առ Գապազ-Թէփէ գեօղիւ, և առաւել եւս 'ի Գարաճալըտէրէ ձորակի։

Ոչ հեռի 'ի կողմանցս' ուր ամուր վայրքն էին Պարոնին Լևոնի, նախայիշեալքն Ցախուտ և Վահկա և այլք, համարիմ և զյիշեալն 'ի պատմչէն համակարգ նոցին զԿարմիր լեառն [1]. թերևս կոչեցեալն արդ յայլազգեաց Գըզըլ տաղ, զոր 'ի վեր անդր յիշեցաք (յէջ 158) և այլուր (139), զատ 'ի Գզըլ Թէփէ անուանելոյն (էջ 4). եթէ մի 'ի սոցանէ և եթէ այլ' Կարմիրս այս Լեառն ծանօթ նախնեաց մերոց, ոչ լոկ անշէն վայր էր բնական, այլ և ամուր տեղի ապաւինի. և զորօրինակ յայսպիսի անքոյթ տեղիս' սովոր էին և տեարք տեղեացն և յարեալքն 'ի նոսին' հաստատել և կայանս աղօթից և ընթերցմանց, խնդրելի են և աստ վանք 'ի նոյն անուն լերինն։ Զայս հաւաստէ մեզ բան մի Ստեփ. Ուռպելեան' 'ի թղթին առ Գրիգոր Անաւարզեցի կաթողիկոս, այսպէս գրելով. « Ցորժամ էր մեր նուաստութիւնս առ ձեր փառաւո-
» րութիւնդ, որ և փանաքանք կողմանս Կարմիր լերինն
» զականչս մեր խիտ առ խիտ տաղտկացուցին (հռոմա-
» ւէր ասելով զԳրիգոր). որ և յայսպիսի բաղբաղանաց
» փաստ առեալ աստուածապատիւ Թագաւորին (Լևոնի
» Բ) և բնաւին ժողովոյն' ոչ օծին զընտրեալդ 'ի Հո-
» գւոյն » (յամի 1286), յետ մահուան Ցակոբայ կաթողիկոսի։ Թէպէտ յայսմ կողման երկրիս, և թէպէտ մերձագոյն յԱնաւարզա' 'ի թեմն Գրիգորի' էր վանատեղի Կարմիր լերին, մեզ հարկ էր յիշել միանգամ, և ապագայից թողուլ զքննութիւնն և զստուգութիւն։

61. Զարդիս գլխաւոր չէն համօրէն միջագետացս Սարոսի, և առանձին վիճակի միոյ Մարաշ գաւառի' նահանգին Ադանայ' է Հաճին, յարևելեան հարաւային ստորոտս կամ 'ի թիկունս Զամըրգ լերին, իբրև 'ի 1400 Զ. բարձու, յերի Զաթալ-կէօզ վտակի, որ և յանուն քաղաքաւանին կոչի Հաճնոյ ջուր, իջեալ յ'Օսրուխ ձորակէ։ Մէջ քաղաքին առապար է դժուարակոխ, այլ գեղեցիկ է տեսիլն, թատերաձև զետեղեալ 'ի պառակ լերինն, և բարգաւաճ բուսաբերութեամբ ղուարճացեալ, ոչ միայն վայրենի ծառոց, այլ և այգեօք և թթենեօք, ընդ որս յիշին և ձիթենիք։ Ցազգս ծաղկանց վայրի նշանակի և տեսակ մի շահոգրամի (Dianthus oculatus), որ յաւէտ երևի 'ի կողմն սահմանաց Կոկիսոնի. զորոյ փափուկ եբանգս' անմարթ է, ասէ ուղևոր ոմն փռանկ, անաղարտ պահել, ճնշելով 'ի թղթի, ըստ սովորութեան ծաղկաքաղ բուսաբանից, քանզի հանգոյն փոշւոյ թևոց թիթռանց 'ի բաց ջնջին։ Անծանօթ են ինձ ծագումն և յիշատակք տեղւոյս, որոյ այսպիսի անուն ոչ յիշի 'ի գիրս. և ոչ գիտեմ որով ծանօթութեամբ' պատմահայր մեր Չամչեան նոյն համարի զսա և զՀարգան, որոյ երկու եպիսկոպոսք միայն յիշին 'ի սկիզբն ԺԴ դարու, Անդրէաս յամի 1307, Ստեփանոս 'ի 1311, այլ ոչ նշանակի քաղաք կամ վանք լինել Հարգանայ։ Ի քննութիւն խուզարկուաց կամ մերձաւորաց տեղւոյն թողումք զայս և զնորագոյն ծանօթութիւնս. զի ընդերկար քան զյոլովս պահեաց սա չափաւոր իմն ազատութիւն ազգային. և թէպէտ ընդ խստագոյն բռնութեամբ կայր Քօզան օղլու տոհմին, այլ թոյլատրէր և 'ի սմանէ, առ աչի կամաւոր նուաճութեան Հաճնեցւոց ընդ Օսմանեան պետութեամբ և հակառակելոյ ինքեան. և ըստ բազդի ժամանակաց' մերթ բռնանային բիրտ դրացիքն, ձմերելով 'ի շէնս քաղաքին և կեղեքելով զարարս նոցին, և մերթ ինքեանք իսկ ակն ածէին 'ի կորովի քաղաքացեացն միաբանութենէ ընդ այլոց տոհմից. և այսպէս ընդ բազմապատիկ անցս անցեալ, միշտ զատնին իւրեանց տեսչութիւն ինքնօրէն հոգալով Հաճնեցւոց' ընտրելովք աւագորերովն, միայն տեղական հարկահան մի ունելով զՔօզանցւոյն, յետ բազում անցից հուսկ ուրեմն զկնի վերջին դղրդման նոցին և Զէյթունեաց Հայոց, իբրև ձևան արկ պետութիւնն իսպառ նուաճել զնոսին, յամի 1865, խորհուրդ արարեալ և Հաճնեցւոց գաղտ բանագնաց եղեն ընդ զօրավարս սորին' Տէրվիշ և Իսմայէլ փաշայս, առ 'ի զերծանել 'ի վրիժուց լեռնակա-

[1] Տես զոր կանխաւ 'ի կարգի պատմութեան Ռուբինեանց յիշեցաք յէջ 52, 'ի ծանօթութեանն։

նայն. և անկասկածք եղեալ՝ միաբանեցան ընդ արքու-նի՛ զօրուն 'ի հալածել և 'ի նուաճել զապստամբսն, առաջնորդութեամբ իւրեանց եպիսկոպոսի Տ. Պետրոսի Տէր-Մելքոնեան և ուրացն. Ծանուցեալ պաշտօնեայն զքաղաքն յանէ հրդեհի՝ զոր սպառնայր վարչաց տոհմն Թուրքմէնից. և զառաջինն կարգեցին տեսուչ Հաճընոյ զՀամբարձէկ Քօզանեան, 'ի շնորհս կամակար նուաճման նորին. այլ յապստամբել զխառնուրդ ցեղին Նուասուֆ ազէկի՝ քարձին և 'ի նմանէ զիշխանութիւնն, կասկածեալք 'ի համախոհութենէ, և կարգեցին այր հաւատարիմ[1]. — Ըստ վերջին վիճակագրութեան Օսմանեանց՝ Հաճըն քաղաքի և շուրջ աւանացն իբրև 12,000 Հայ բնակիչք էին. իսկ մահմէտականք իբրև 200 ազգք միայն. բովանդակ քաղաքին և վիճակին Հաճընոյ՝ Հայք 13,000, մահմէտականք և նորեկ Չէրքէզք 5682։ Ի մերայոցս ամս յամի 1840՝ գտանէր Հայոց Հաճընոյ հաշուէր 2000, այլ ամս 2500 յամի 1854, Փարտիզպաննեան (1863) 3000. Դէպէ փառնեկ որ յառաջ քան զսոսա 'ի (22 յունիսի, 1836) էանց ընդ Հաճընն՝ նշանակէ 2 կամ 3000 տունս տաճ, և 34 տուն այլազգեաց, և մզկիթ մի սոցա 'ի ստորև չինին։ Չիհաչէֆ որ զառաջինն եկն 'ի Հաճըն յ'13 յուլ. 1849, տեսեալ Հայոց 2000 զրէ, և 190 այլազգեաց. յետ չորից ամաց վերադարձեալ (30 յուլ. 1853), 1500 տուն միայն զրէ Հայոց, և 30 Թուրքաց. Թերևս վասն չքաւորութեան ժամանակին՝ ցրուեալ նոցա 'ի քաղաքէն. քանզի յաւուրսն յայնոսիկ Հաճըն այէկ զխառնուրդն Վարչաց տոհմի Աֆշարաց թշնամութեամբ զայր 'ի վերայ Նուասուֆ ազէկի վերատեսչի Հաճընոյ, և նեղակեալք նորին Չէրքէզ աչէի, և նաւեալ ասորս հինգ կողոպտեալ զվանս Ս. Յակոբայ և աւերեալ զամենայն. այնինչ ընդհատ և Նուասուֆ հարստահարէր զխանդակաւանն, պահանջելով տուրս և զօրմն։ Փուանիկ ուղևորն որ զառաջինն եմուտ 'ի Զէյթուն, եկեալ և 'ի Հաճըն (2 յուլ. 1864), յոյց եւ տես, զոր և նկարագրէ այր անձնեայ և ասխուարժով. և հարցեալ թէ առաջ իցէ քան առաջնորդին Հաճընոյ՝ թէ կարիցէ զումարել 10,000 մարտիկս. ասաց է, ասէր, օգնականութեամբ



38. Հաճըն։

Հայոց. այլ յերկրորդում ամին կրեալ՝ ընդունեցաւ 'ի ձեռն պաշտօնէի միոյ Տէրփէչ փաշայի և Աւսափի Պաշահեան Յաղութեան, և վասն փախստեանն՝ վերստին ձերբակալեալ սպանաւ, ըստ նախագրեցոյս։

Հաճընեցիք պարապին յերկրագործութիւն և յերկաթագործութիւն. այլք յարուեստս և 'ի վաճառականութիւն։ — Եկեղեցիք են նոցա, անշուքք և անզարդք, ըստ ստորագրութեան փուանիկ ուղևորին (1864)[2], յորոց

1 Չեարոս եպիսկոպոսս որ գրեաց համառօտ պատմութիւն Ազատութեան Հաճընոյ, զառաջին կուսակալն այր մի ըստ մեղէ փոխանակեցին իւր աւանոր իշխանութեամբ՝ նշանակէ. Ամէ Էֆէնտի զառ Հիւսէին էֆէնտի. Ամէ էֆէնտի Քէրբէթլը. Պէկոսեան զառ Պետրոս Պէկ. և Ղազար Պէկ։

2 Les vastes hangars qui servent d'églises sont misérables. De grosses poutres soutiennent la toiture; quand la charpente menace ruine, on l'étaye... Le sol n'est recouvert que de quelques tapis usés jusqu'à la corde et de nattes tressées grossièrement, par des hommes ou des femmes plus zélés qu'habiles. Quelques tableaux figurant des Saints impossibles grimacent çà et là sur les murailles humides: un fauteuil en bois sculpté pour l'évêque, quelques tabourets pour les religieux, un maître-autel sans ornement et quelques verroteries grossières composent tout l'ameublement des églises. — Léon Paul.

օղլու։ Սա խնդրեաց և ընկալաւ 'ի Թագաւորաց Հայոց ազատութիւն՝ արածելոյ զհօտս իւրեանց 'ի դաշտավայրս և 'ի լեռնակողմանս աշխարհին. և առ փոքր փոքր հաստատեցին անդ զդադար իւրեանց. ապա 'ի տկարանալ տէրանց Հայոց և Նուազել բնակչացն, աստուստ Թուրքմանք և յարեալք 'ի Նոսին Աֆշարք, և անտուստ Գարամանեանք՝ համակրօնք զօլով սուլտանաց Եգիպտոսի հակառակորդաց Հայոց, բաժանեցին զաշխարհն յարօտս իւրեանց, կէսք ազատօրէն և կէսք հարկելով Եգիպտացւոյն. մինչև զօրացեալ Օսմանեանց՝ յելս կոյս ԺԵ դարու Նուաճեցին զմասն ինչ երկրին, և 'ի բառնալն զսուլտանութիւնն Եգիպտոսի 'ի սկիզբն ԺԶ դարու՝ զբովանդակ իսկ Կիլիկիա մարզ կացուցին։ Բայց յայնց ժամանակաց ցաւուրս մեր՝ յոլովք 'ի տոհմից Թուրքմանացդ փոքր 'ի շատէ հայրենի ազատութեամբ կէին որջացեալք 'ի ձորս և 'ի լերինս, վասն որոյ և Զօրատեարք կոչեցան (Տէրէ-պէկի). բազում անգամ գուն գործեաց Օսմաննեան պետութիւն, այլ ոչ յաջողեցաւ իսպառ Նուաճել մինչև ցվերջին քառասնամեայ ժամանակս. յորս ծաւալումն քաղաքականութեան եւրոպական ազդեցութեամբ, և հարկ ապահովութեան անցուդարձի երթևեկաց՝ ստիպեցին կանոնաւորել և զտեսչութիւն կողմանցս. բայց զդէպս պատերազմաց Եգիպտացւոց ընդ Օսմանեանց՝ պատեհ առեալ լեռնականացն՝ ըստ օգտի իւրեանց միտէին յայս կամ յայն կողմն. մինչև դադարեաց խաղմն, Եգիպտոս ամփոփեցաւ ընդ վեհագոյն իշխանութեամբ Սուլտանին, և Թուրքմանք ստիպեցան՝ գէթ առ վերին երեսս՝ հանդարտել ընդ տեսչութեամբ փաշայից, կալով մնալով 'ի սեփական վիճակս իւրեանց. այլ երբ և յաջող թուէր Նոցա ժամանակն՝ դադարէին 'ի տալոյ հարկս, և երբեմն զինու իսկ ղդէմ ունէին. և որպէս յիշեցաւ 'ի վեր անդր՝ յամս 1852-9, յորս յաճախեցին եւրոպացիք գալ 'ի քննութիւն աշխարհիս (որպէս Գեսիէ, Լանկլուա, Չիհաչէֆ, Քոչի, Աւստրիացի ապայք, և այլն), գտին տիրաբար բռնացեալ կողմանցս զՋաուրքճի Մէհէմմէտ տոհմապետ Քօզանեանց՝ 'ի բնիկ լերինս Քօզանայ, և զեղբարս Նորին (զի էին բազումք) յայլ և այլ կողմանս, որպէս Եուսուֆն գլխաւոր Աֆշարաց 'ի Հաճնոյ սահմանս, Եօմէր պէկ 'ի կողմանս Պէլէնի, որում մերձ վիճակն Սարգանտ օղլու, գլխաւոր ունելով ըզՄուրթազ-աղա. առ սոքօք հզօր տոհմն Եիւրիւք՝ ունէր զսահմանս Սսոյ. Հաճի պէյ գլխաւոր էր Վարշագաց, Սամառա պէյ՝ առաջնորդէր Գարսանտ օղլու տոհմի՝ դադարելոց ընդ մէջ Ալա-տաղ լերանց և Զամանդեայ. յելից սոցա վիճակն Մուստաֆա աղայի, և մերձ Նմին Թէքէլի օղլու. յարևմտակողմն սոցին՝ 'ի միջոցս Պուլղար և Ալա-տաղ պարուց՝ տեսաք զՄէլէմէնճի տոհմն, և հեռագոյն յարևելս 'ի Սեաւ լերինս տեսցուք զԹուրքմանս, որոց յայսմ ժամանակի գլխաւոր էր Օսման պէյ. ընդ որս Թափառէին և աճարկու Հայուկք, յանուանէն յայտ առնելով զծագումն իւրեանց, այլ խառնեալ ընդ այլոյ տոհմի՝ Քրդահայք համարին։ Էին և են այլ ևս տոհմք կամ տոհմակիցք առանձնակ գլխաւորօք. որք առ հասարակ՝ որ կամաւ և որ զինու զօրութեամբ՝ յետ Նըւաճման Զէյթունցւոց (1862-3) հնազանդեցան պետութեանն, 'ի ձեռն Տէրվիշ փաշայի. զի արկեալ սորա Նախ ընդ իշխանութեամբ զՍեաւ լերինս (1865), ապա խաղաց 'ի վերայ Քօզանեանց՝ 'ի կողմանց Սսոյ, մինչ Իսմայիլ փաշայ դիմէր յարևելից հիւսիսոյ, առաջնորդ ունելով զմանս 'ի Հաճնեցւոց, ընդ որս և Նախայիշեալն Տ. Պետրոս եպիսկոպոս, և Նիկողայոս եպիսկոպոս Բերիոյ՝ որ յետոյ կաթողիկոսն եղև։ Անպատրաստք գտեալ և անբաւականք առ ղդէմ ունել հրահանգեալ զօրու, և լքեալք 'ի Հայոց, մի ըստ միոջէ եկին 'ի հնազանդութիւն Հաճի պէկ, Ահմէտ աղա որդի Եօմէրի տիրողին Պէլէնի,՝ Եուսուֆ պէկ, որ երկիցս ձերբակալ եղեալ 'ի մահ վարեցաւ, ըստ վերոյգրելոցս. իսկ այլք 'ի տիրապետաց առաքեցան իբրև յաքսոր յայլևայլ գաւառս հեռաւորս. և ապա կարգեցան Նուաճեալ վիճակացն տեսուչք (գայմագամ) ընդ իշխանութեամբ գաւառապետաց Մարաշոյ և Ատանայի, սահմանեալ օրինօք վարչութեան։

Բուսութիւն բնակչաց կամ Թափառողաց Քօզանեանց՝ չեղև բաւական խափանել զհրապոյրս ծաղկաւէտ երեսաց երկրին, առ շնորհել բուսաբանից սպրդել և 'ի զանխուլ կողմանքս, թէ և 'ի հարևանցի. և ոմանց շնորհս գտեալ յաշս բռնաւորացն՝ շրջեցան, քաղեցին և Նշանակեցին ոչ սակաւ ազգս բուսոց. յորոց սակի են և Խառածաղիկքն մակակոչեալք Պաղեստինեան և անկիւնաւոր (Ranunculus Palæstinus, R. Cuneatus), Երնջնատակք՝ աշտէաձև, զմիւռնեանն և ալպեայն (Erysimum thyrsoideum, Er. Smyrneum, Er. alpestre), Երեկորեակ մանուշագոյնն և չիկորակն (Hesperis violacea, Hes. flava), Վառվռուկ պրկիկ (Alyssum strictum), Կոտեմ այլատերև (Draba diversifolia), Ցափկի ծաղկախիտ (Thlaspi densiflorum), Ցարաբեկիկ (Æthionema Iberideum), Գոձամօրու լայնասաղարթ (Hypericum latifolium), Գնձմնձուկ ջղախոտեայ (Barbarea plantaginea), Պարզծիլ մրտատերև (Haplophyllum myrtifolium), և այլն, և այլն։

63. Սակայն ոչ շատանայ այսոքիւք մերս հետաքննութիւն բանական, ըղձակերտ զօլով ստուգել գիտել՝ թէ գուցեն անդ և յիշատակք և տեղիք ազգայինք և հայանուանք. թէ անդ իցեն արդեօք վայրք վախճանի Բագրատունեան մերոյս հարստութեան, և սկզբան յաջորդի Նորուն Ռուբինեանցն, զորմէ յաւէտ խնդիրս մեր է. և պարզապէս ասել, որոնել 'ի զանխուլ կողմանսն՝ զբերդն դըժխեմ՝ յորում դաւաճանեցաւ Գագիկ Բ, և զոր կորզեաց 'ի դաւաճանացն քաջակորովն Թորոս։ Երկակի կոչի տեղին այն 'ի պատմչաց՝ աննման անուամբք. Կիզիստռա կամ Կիզիստռէ, և Կնդռօսկաւի. առաջինն ըստ Մատթ. Ուռհայեցւոյ և Սմբատայ. այլ Ուռհայեցին յերկրորդում Նուագի 'ի պատմութեան Նուաճման տեղւոյն 'ի Թորոսէ՝ զերկրորդ անունն գրէ, զոր և առ հասարակ այլ ամենայն յիշատակագիրք ծագման տոհմին Ռուբինեանց, արքունի Պատմիչն մեր, Հեթում և Սամուէլ ժամանակագիր, և այլք ըստ սոցանէ. և զի երկոքին ևս կողմանք հաստատութեամբ գրեն, 'ի դէպ է համարել՝ կամ ստուգիւ երկանուն լինել տեղւոյն, կամ փոփոխել անուանն, և կամ մանաւանդ միոյն զբուն բերդն Նշանակել, և միւսոյն զաւանն։ Աներկբայագոյն է կոչումն բերդին Կնդռօս-

հայի, որ այլայլութեամբ գրի և Կենդաւախայիս, Կընդաւախայի, Կիտտաւախայի, Կենդաւաղոյ, Կիդաւաղոյ, Կիդաու. այլ հարթեմ ոչ գտանի առ Յոյնս այս անուն. բայց Կիդիստաւ յիշի և 'ի Պտղոմէոսէ, Κύζιστρα, ընդ քաղաքս Կապադովկիոյ, ընդ 39° 20' աստիճանաւ լայնութեան, և ըստ Պեւտինգերեան ինքնակալութեան' ընդ մէջ Կեսարիոյ և Տիանեայ, որ և քաջ պատշաճի կողմանցս զոր տեղագրեմք։ Միրայինք գրերդն' դրով և է անուամբ' աւանն գոլ 'ի գաւառին Արձիւայ (Արգէոս լերին), կամ « մերձ յԱրձիւս ». արքունի Պատմիչն և Սմբատ Հընդըրստացին ևս տան նշանակ. « Այնուր բերդ մի' մօտ 'ի » Զկնջուր, վերահայեաց աշխարհին Գամրաց ». Մատթէոս ոչ վերահայեաց ասէ' այլ « լեռանահայեաց աշխար» հին Գամրաց ». զոր Սմբատ փոխէ « լեռանահայեաց' » 'ի Գամրաց աշխարհին ». առաջինն (Մատթէոս) ծանուցանէ զի ոչ լոկ գետ է խնամոյ զանգի սահմանին' այլ և վիճակ, զի ասէ, « մերձ 'ի յերկիրն որ կոչի Զկնջուր »։ Անծանօթ է մեզ արդ յայս անուն տեղի կամ գետ. զի թէպէտ և զոյ Պալըգլու սու գետ, այլ հեռագոյն յարևելից հիւսիսոյ 'ի կողմանս Կիւրինի. բայց տեղի բերդիս զորմէ խնդիրս է' մերձ յԱրձիւսայ գաւառն էր, յեղեց Հայրաւոյ Նորին. անդէպ զոլով յարձակ վայրի լինել աշխարհաց բերդի' « աշտանի բարձրութեամբ ամրացեալ », որպէս ասէ Ուռհայեցին, և լեռանահայեաց կամ վերահայեաց զոլ աշխարհին Գամրաց։ Լաւագոյն թերևս առեղէ Հեթում 'ի ժամանակագրական յիշատակս իւր, « 'ի բերդն Կենդաուաղի' 'ի Լիկանդունն »։ Ծանօթ էր առ Բիւզանդացւոցն գաւառս կամ նահանգս այս, Լախանիդիս, Lacanitis կոչեցեալ 'ի հնագունից, և ապա Lycanitis, յորմէ Լիկանդան կամ Լիւկանդան. զորոյ գիրս թէպէտ և փոքր մի այլր անգր ձգձգեն նոր աշխարհագիրք, այլ հնագոյնք հաւանին 'ի Հռ. Եյ. ծայր Կիլիկիոյ լինել, որպէս և պատշաճի վկայութեան Հեթմոյ. և ոչ ինչ ըստ նանէ' ամանց աշխարհագրաց Կապադովկիոյ մասն համարել զայն, և այլոց' Կիլիկիոյ. զի առաւ և մերձս վիճակին սահմանակցութեանն, յանելն վերահայեաց աշխարհին Գամրաց, յայտ է թէ ընդ հիւսիսի. բայց 'ի հարաւոյ սահմանորդ լինել յետին տեղագրեալ վայրաց մերոց' վկայեն պատմիչք մեր, որք վասն Կնդաուախայի կամ Կիդաուայ ասեն' մերձ և սահմանակից կոչուածոց Թորոսի, խնս Վաշխայի. և յայս ասեն, ասեն, տեարք բերդին' Մանդալեանք' « խռովեալ էին ընդ գրերդն' Թո» րոսի, վասն զի սահմանակից էր գաւառի Նորա. և 'ի » Թորոքէն նեղէին յոյժ »։ — Նւ արդ յայսմ ամենայնէ հաւանելի է' զի տեղիդ թէ ոչ յուշէ Սարոսի' գէթ յանհեէ նորին էր, 'ի լեռնավայրքս զրաւեալս յստարատեաց



39. Մաչտոց գրեալ յԱնդրուն, յամի 1332. (Տես յէջս 156 և 169).

անուն Թուրքմանաց կամ Աֆշարաց։ — Թողում արդ ախորժենեն' յիշել ատանոր զդժպհի դէպս գաւառաց և եղերական սպանմանն Գագկայ վերջնոյ' և զխականն կախելոյ 'ի նշաւակի բարձրաբերձ պարսպաց բերդին' յերգիծանս Հայոց, յորմէ կորզեալ Շերախացւոյն Բանկան' տարեալ թաղէր 'ի վանս նորին' 'ի Պիզու. նոյնպէս և զվրէժն' զոր յետ երկսուն կամ երեսուներեքուս ամաց' եկաց 'ի գաւառանիցն' Թոռն Ռուբենի Թորոս Ա. զըղ-ջամբ արկեալ ընդ բերդատերանցն և զերդն. յորմէ բարձեալ զմթերեալ գանձոն' փոխադրեաց յաթոռ իւր, նախ 'ի Վահկա, և ապա յայլ ասամս[1]. բայց 'ի Կիդիստաւ եղեալ պահապանս, ապա տայր խանգարել զայն, և « զընակիչս բերդին բնակեցոյց առ ափն գետոյն Պա» տարիոյ, որ այժմ Կրաւիկա կոչի անուն տեղւոյն »։ Ի պատմութենէ աստի նուաճմանն' երևի 'ի բարձու քարալերին կալ բերդին. զի ասի վասն զօրացն Թորոսի, « ընթանային ընդ զառ 'ի վեր բերդին ». և էին նորա կրկին պարիսպք, քանզի Յոյնք 'ի փախչելն 'ի Թորոսեանց' « զներքին դուռն փակեցին ընդդէմ հետևակացն, » և զդրունս ոչ զօրեցին փակել. և հետևակին Թորոսի » խլեցին զդուռն, և հուր բորբոքեցին 'ի բերդն. և երկուցեալ բնակիչքն' բացին զդուռնն որ կայր 'ի միւս » կողմանէ, և սկսան փախչել[2] »։ Էր առ բերդաւն և տեղի քարախաւր, ուստի մի յերից եղբարցն Մանդալեանց' « ձգէր զինքն 'ի բարձրութենէ քարին 'ի վայր, և ան» կեալ սատակեցաւ չարաչար »։

1 Ուռհ. « Նւ մեծամեծ արարեալ զամենայն ստացուածս' բարձեալ » զանձս և զեղջակս և խաչս յոյժ մեծամեծս արծաթիս, և պատկերս » ոսկեձոյլ և արծաթ, տանել զնոյն 'ի Վահկայն. և զԽա եղբայրն » զԳիր [illegible] . և զնէր զզորան 'ի բերդն պահապանս »։

2 Այսպէս Սմբատ. բայց Ուռհայեցին ասէ, « Սկսան զառն» բալ [illegible] և կրակ հարկանէին ընդ ցանկս բերդին »։

Աներկբայ ցուցեալ զմերձաւորութիւն երկոցուն բերդիցս՝ Կինդռօսկոյի և Վահկայ, փափագելի՝ այլ դժուարին ևս է ստուգել զկալուածս և զնստոց Ռուբինի Ա, որ ըստ տեղւոյ Թաղմանն 'ի Կաստաղօն՝ մերձ 'ի վայրքս երևի գոլ. այլ՝ պատմիչք չփոթ ինչ և ոչ պարզապէս ցուցանեն զերկոսին ևս կացուրդս նորա. առաջնոյն՝ Կոսիտառայ բերդի, ասէ ոմն տիրել նորա և յառաջ քան զմահն Գագկայ. և այլ ոմն՝ թէ յետ սպանման նորա » գայ առնու զամրոցն զԿաւսիտառայ. յորում և դնէ » ինքեան տուն իշխանութեան, և տիրէ լեռնակողմանցըն Փռիւգիոյ » ։ Անեցին՝ որ ասէ նախ ունել նորա զԿօսիտառա, ապա դնէ զգալն 'ի կողմանս Փռիւգիոյ, « դիմելով 'ի գեօղ մի Կօլմօզօլայ անուն ». և Վահրամ խառնակ ևս.

> « Ի Տաւրոս լեառըն փախուցեալ,
> Ի Փռիւգիա կողմանս իջեալ.
> Դիմեալ 'ի գեօղ մի կոչեցեալ
> Կօռմօզօլոյ, և անդ բնակեալ » . և այլն։

Այլ ոմն համառօտ պատմիչ գործոց Ռուբինեանց՝ յելս ԺԳ դարու, առանց յատուկ տեղեաց յիշատակութեան՝ ասէ. « Դիմեաց յարևելից, եկն 'ի սահմանս Տարսոնի, 'ի » գահ Կիլիկեցւոց, և բացեալ ընդարձակեաց տիրեաց » կողմանցն այնոցիկ »։ Ոչ ինչ ստուգեն բանքդ զտեղւոյ բերդին Կօսիտառայ, և ոչ իսկ զշարժմունս Ռուբինի, որպէս և 'ի նախաբան գրուագին յիշեցաք։ Մարթ է համարել զԿօսիտառդ մերձ յարևելեան սահմանս Փռիւգիոյ, և անստուգ զդիմելն Ռուբինի 'ի լերինս Տօրոսի, և զբնակիլն 'ի գեօղն Կորմոզոլա կամ Կօռմօզօլայ. և զըտանել անդ զազգայինս ոմանս, ժողովել զնոսա առ ինքն և նոքօք տիրել լեռնակողմանցն։ Եթէ գոյր և աւելի ինչ նշան հաւաստեաց մերձաւորութեան Ռուբինի յայս կողմանս՝ քան զմերձաւորութիւն Վահկայի և Կաստաղօնի, հրապուրէի զուգել զգեօղդ Կօռմօզօլ ընդ այժմու յունարնակ գեղջն՝ զորմէ գրեցաւ 'ի վեր անդր (յէջ 160), և զորոյ անուն գերմանացի ուղևորք գրեն յարաձայն ինն, Korumsze, Gorumse, Korumsa.

Բայց հարկ է մեզ և զայս և զամենայն փափագելի ծանօթութիւնս միջագետացս զուգառաջն Սարոսի՝ 'ի Հաճնոյ և 'ի վեր, մինչև անդր քան զարևելակողմն Արգէոսի և Կեսարիոյ՝ ցակունս Ջամանդեայ, յանձնել 'ի քննութիւն բաղդաւորի յետագայի, և առանձինն զտեղին կամ զչէն՝ յորմէ առնու արևմտեանդ այդ առաջ գետոյն զանունն, զկոչեցեալն 'ի պատմչաց մերոց Ծամընդաւ, և զառ 'ի կայսերաց տուեալն Գագկայ Թագաւորին Կարուց, փոխանակ գաւառին Վանանդայ. չէ մեզ աստանօր փոյթ քննութեան սորին՝ թէ իցէ՞ արդարև յայսմ մարզի՝ եթէ քաջ 'ի բաց անդրագոյն մինչև 'ի սահմանս նահանգին Ամասիոյ, որպէս ոմանց թուեցաւ. զի թէ մօտ և թէ հեռի՝ արտաքոյ է սահմանաց Կիլիկիոյ և յիշխանութենէ տիրապետաց սորին մերայոց, և ոչ որպէս Կիզիստրայն բերդ, որոյ իշխան յիշի և 'ի սկզբան ԺԴ դարու՝ Լիկոս անուն, ընդ ժողովեալսն 'ի Սիս վասն կրօնական խնդրոց։

Ի թողուլ մեր արդ զկողմանքս յուշ արասցուք 'ի քննութիւն և զԷնտէրուն վիճակ, մի 'ի կարգելոցն 'ի գաւառի Մարաշոյ ըստ օսմանեան դիւանաց, որոյ և դիրք անծանօթ, բայց թուի մերձ 'ի Հաճին. նշանակեալ է 'ի յիշատակագիրս մեր անուամբ Անդրուն գեղջ, զոր յիշեցաք յառաջ 'ի ստորագրութեան Ակներոյ, և զոր կրկին յիշեցուցէ նմանատիպ գրուածն Կոստանդեայ Թարգմանչի որ 'ի հանդէպդ (էջ 168)։ Բայց իցէ թերևս 'ի գետահովտի Ջահանայ, որում պատշաճի Մարաշ գաւառ, ուր և վտակ մի է համանուն։ — Սորին գաւառի վիճակ մի մեծ է և Պուլանըգ յահեկէ Ջահանայ, 'ի հիւսիսային ստորոտս Ամանոսեան լերանց և ոչ հեռի 'ի Տիւլտիւլ լեռնէ, թերևս 'ի հնումն ամփոփեալ 'ի բաժնի Կիլիկիոյ, և ունի աւան համանուն, 80 տամբք Հայոց։



40. Աւերակ եկեղեցի յԱնազարբա.

# ԹԻԿՈՒՆՔ ԳԱՀՈՒՑ ԿԻԼԻԿԻՈՅ

64. Մինչև մնեալ 'ի գետահովիտս Ջահանայ և հեռացեալ 'ի գաւառէ Կիլիկիոյ, արժան համարիմ ակն արկանել զամ մի և 'ի թիկունս սոցին՝ ըստ հիւսիսոյ արևմտից, 'ի Տիանեանն մարզ. որ թէ և չէր բնիկ Կիլիկիոյ մասն, այլ հզօր ձեռամբ Լևոնի յարեցաւ երբեմն 'ի նոյն. քանզի և էր իսկ սահմանորդ հիւսիսային Կիլիկիոյ և արևմտեան հիւսիսային ձորահովտաց Սարոսի, անջրպետեալ Խուչ-գափու լերամբք՝ 'ի կողմանց երկաթահանից Պէրէքէթլի-մատէնի և Փաւստինուպօլսոյ. և համարէր 'ի հնումն արևմտեան հարաւային ծայր Բ Կապադովկիոյ, միջամուխ լինելով Կիլիկիոյ և Լիկայոնիոյ: Ցանուն գլխաւոր շինին կոչէր ՏԻԱՆԵԱՆ ԳԱՒԱՌ, (Τυανῖτις, Tyanitis), որ ըստ այժմուս Օսմանեան վարչութեան՝ մի է 'ի գաւառաց Գարամանեան նահանգի, Նիկտէ կոչեցեալ, և ըստ արևմտեան հարաւայնոյ մասին՝ անուանի Էրէկլի, որ է վիճակ բնիկ Իկոնիոն (Գոնիա) գաւառի՝ նորին Գարաման նահանգի: Այսպէս 'ի կեան կալով և միջամուխ 'ի մարզս Կիլիկիոյ՝ չէր ինչ օտար յօդանալն 'ի նոյն, որպէս եղեն առ Լևոնիւ. այլ զի մեծի սուլտանութեան Իկոնիոնի պատշաճագոյն էր բնական դիրք երկրին՝ ոչ ընդերկարեաց ընդ մերայոցս ձեռամբ. բայց և ոչ թափուր մնաց 'ի Հայութենէ. քանզի և Տիանա եպիսկոպոսանիստ թեմ էր կաթողիկոսութեան Հայոց՝ յայնժամ: — Արդ գաւառս այս 'ի թիկունս Ալա-տաղ լերանց՝ անջրպետի ըստ արևելեան մասին՝ Գորգպունար և Խուչ-գափու լերամբք, և 'ի հիւսիսոյ՝ Ատիրմուսան լերամբք, որք պատին զբնիկ Նիկտէ վիճակաւ. արևմտեան սահմանքն անորոշք են, նոյնպէս և մէջ երկրին և ընթացք ջրոցն ոչ քաջ ծանօթ. այլ թուի վտակաց 'ի յիշեալ լերանցդ ժողովել և գետ իմն կազմել Գզըլճէ կամ Գզըլ ըրմագ անուամբ, որ ընթանալով ընդ արևմուտս հարաւոյ՝ սուզի յԱգ-կէօլ լիճ, ընդ մէջ Տիանեայ և Արակլեայ:

## ՏԻԱՆԱ. — ՆԻԿՏԷ

Առաջին տեղի մերձաւոր նախածանօթն մեզ վայրաց՝ իբրև երկու փարսախաւ 'ի հիւսիսոյ Պէրէքէթլի-մատէն գեղջ, և թերևս սեփականագոյն Կիլիկիոյ քան Կապադովկիոյ, յարևելեան հիւսիսային թիկունս Գորգպունար լերին՝ նշանակի աւերակ բերդն (Այծից) Քէչի-գալէսի. յոր ածէ լեռնային անձուկ նրբուղի 'ի գեղջէանէ անտի մետաղացն, և տանի ընդ Մ. Հս. 'ի Նիկտէ, և ընդ Եւ. Հս. 'ի Նէվշէհիր, անցեալ ընդ այլևայլ գեօղս յելից Նիկտէի. որպիսիք են Լաւսաճ, Խուչ աղաճ, Պաւղաճա?, Այրամաս?, Մինճնորկ, Ուլու աղաճ. և 'ի մտից սոցին մերձագոյն 'ի Նիկտէ՝ Էսկի-կիւմիւշ 'ի գլուխս Նիւմրիւ-չայ գետակի, որ բղխեալ յԽուչ-գափու լերանց՝ իջանէ ընդ հիւսիս, և հոլովեալ ջրաղաց մի առ գիւղիւն՝ դառնայ ընդ արևմուտս, անցանէ ընդ Նիկտէ և ընդ Պօռ, և խաղայ 'ի Տիանա, և անտի յառաջ կոչի Գզըլճէ, կամ խառնի յայս անուն գետակ և թափի յԱգ-կէօլ լիճ: Որպէս անուն գեղջն Էսկի կիւմիւշ (Հին արծաթի) յայտ առնէ, էին երբեմն անդ քանք մետաղաց, այժմ լքեալք. երևին և հետք նախնի շինուածոց, որպէս բեկորք կճեայ սեանց: — Ընդ մէջ նախայիշեալ Խուչ-գափու լերանց 'ի հարաւոյ և Ատիրմուսանի 'ի հիւսիսոյ՝ կայ գլխաւոր շէն գաւառի՝ Նիկտէ քաղաքաւան. ուր, զի սակաւուց գիտուն ուղևորաց հանդիպեալ է, հաճոյական և կարևոր նոյնին իսկ համարիմ զստորագրութիւն մերոյս Ինճիճեան Հ. Ղուկայ, 'ի սկզբան դարուս. որ և ասէ. «Կառուցեալ կայ 'ի զուարճալի և 'ի շատաջուր վայրի՝ առ Գզըլ-ըրմագաւ, որ 'ի հնումն կոչէր ըստ ոմանց Դրաղէ քաղաք, յիշատակեալ 'ի Պտղոմեայ. հեռի 'ի Գօնիայէ չորս օթևանօք՝ յարևելս հիւսիսոյ նորա, յԷրէկլիէ՝ երկու օթևանօք 'ի հիւսիսակողմն նորա. պատեալ կայ ամրաշէն քարակերտ պարսպաւ, և 'ի մէջն անդ ունի մեծանիստ բերդ վաղնջական 'ի վերայ ապառաժի՝ որ 'ի կողմանէ քաղաքին երևի բարձր յոյժ. 'ի մէջ բերդիս գոյ և այլ ներքնաբերդ բարձրագոյն քան զառաջինն 'ի չափ երեք կայի, ուր են պահնակք և բերդակալ, որք և ունին տունս և մզկիթ: Բնակիչք քաղաքիս Տաճիկք, Հայք, և Յոյնք, հանդերձ եկեղեցեօք իւրեանց. մետասան մզկիթք են Տաճկաց 'ի քաղաքին և 'ի բերդին. յորոց զմին շինեաց Ա. Սուլդան Ալայէտտին Սէլճուգեան հանդերձ մեծաշէն մէտրէսէիւ. իսկ զմիւսն շինեաց Սէնգուր պէկին. մի 'ի մզկիթաց կոչի Հասան-չէլէպի ճամիսի: Ունի և բաղանիս պայծառակերտս և վաճառանոցս. փոքր ինչ հեռի ունի և բացատ քաղաքի կամ թաղ ինչ իբր արուարձան՝ որ զկնի շինեցաւ: Շուրջանակի գեղաքաւան լի են այգիք և պարտէզք, որոց արմտիք և պտուղք բազմատեսակ և առատ. հանդէպ իւր ունի վայր ընդարձակ զբօսանաց քաղաքայնոց. յորում 'ի տեղիս տեղիս են ջուրք հոսանուտք, և հովանաւոր ստուերք: Ի շրջակայս բլուրս տեսանին տեղիք գետնափորք, նման ընդերկրեայ գերեզ-

» մանաց »։ — Այժմեան գիտնոց կարծիք են եթէ Նիկտէ կայցէ 'ի տեղւոջ հինն Կադինայ կամ Կադւինայ (Τὰ Κάδηνα)․ զթիւ բնակչացն ումն յեւրոպացի ուղեւորաց՝ յամս 1838–40 գրէր 900 կամ 1000 տուն Թուրքաց, 40 տուն Հայոց և 30 Յունաց․ այլ ոմն սակաւուք յառաջ քան զնա՝ ընդ բնաւ 5000 ոգիս։ — Շուրջ զքաղաքաւն են արուարձանք կամ գեղակք, յորս նշանաւոր է Գայապաշի (Քարագըլուխ) վասն չիրմացն․ և 'ի սոսին գեղեցիկ ճարտարապետութեամբ բազմաքանդակ ութանկողմն և բրգակատար քարակոփ շիրիմ՝ համարեալ Ֆաթմայ խաթունի դստեր սուլտան Ահմէտի Ա․, մեռելոյ յուխտագնացութեանն 'ի Մէքքէ․ բայց ազնուութիւն արուեստին և նմանութիւն Սէլճուգեան մահարձանաց՝ հնագոյն կարծեցուցանէ քան զժամանակ Ահմէտի (1603–1617)։

Յաւելու Հ․ Ինճիճեան և վասն հարաւակողման Նիկտէի․ « Իւչ գափուլու, դաշտավայր բարձրանիստ ձգեալ » 'ի մէջ փեղկից երից լերանց, յորմէ կոչեցաւ 'ի Տաճկաց » Իւչ-գափուլու, այս է Եռադռնաւոր, հեռի 'ի Նիկտէէ » երեք ժամաւ, յետկոյս լերանցն՝ որք մերձ են 'ի Ջիֆտէ » խանն․ լի են 'ի սմա ծաղիկք բազմերանգք, սիւմպիւլ, » կակաչ, այսինքն լալէ, և այլ ծաղիկք։ Թիւրքմանք իբր » 'ի բազում յայս վայր ելանեն յամարայնի, և կազմեն » պանիր ընտիր յոյժ եղեալ 'ի տիկս »։ — Մարթ է յաւելուլ և մեզ 'ի շնորհս դաշտավայրիս՝ զնախնեաց յիշա-



41․ Շիրիմ Ֆաթմայ խաթունի մերձ 'ի Նիկտէ․

տակ՝ վասն քաջ ձիարոյծ կողմանցս․ քանզի հիւսիսային արեւելեան մասին սորա պատշաճին ասացեալքն 'ի հին հռոմէական ճանապարհագրաց՝ վասն ուրումն Պամպալոսի (Pampalus) կամ Պալմատիոսի, (ըստ այլոց Պամպիտոս կամ Պամպատ), առն մեծատան, որոյ էին ջոկք երիվարաց սուրհանդակաց յԱնդաւալիս կամ Անդաւիլիս գեղջ օթեվանի[1], որովք պարծէր ճոխագոյն լինել քան զկայսր Վաղերիանոս՝ ժամանակակից իւր։ Գեղակն այն (Andabalis, Andavilis) զոր ճանապարհագիրն ասէ 16 մղոն հռոմէական (որ է 12 ըստ մեզ) հեռի գոլ 'ի Տիանեայ, կայ յՆԼ․ Հս․ Նիկտէի, և կոչի Հին Անտաւալ, Էսկի Անտաւալ, քանզի է և Նոր Անտաւալ մերձագոյն

1 Mansio Andavilis: ibi est villa Pampali, unde veniunt equi curules. — Այսպէս ասէ Երուսաղեմեանն ճանապարհագիր։

'ի քաղաքն, 'ի ստորոտս լերանց. չիք նշանակ հնութեան և յառաջնումն, բայց կիսաւեր եկեղեցի մի յանուն Ս. Կոստանդիանոսի։ — Ի շրջակայս և 'ի լեռնոտին են և այլ գեօղք, որպէս Այիոս Նիգոլա (Ս. Նիկողոս), Եղյանը Բանայիա (Օծից Ս. Աստուածածին), որ և Ֆիրմասուն կամ Ֆռենկ տէրէսի. Թերևս առ յիշատակէ ինչ Խաչակրաց այսպէս կոչեցեալ։ Են և յարևմտակողմն քաղաքին յունաբնակ գեօղք. իսկ 'ի հիւսիսոյ՝ Քիրտունուս? (Keirdunus). յարևմտից հիւսիսոյ՝ մեծ և հայանունն գեօղ Առաւան, որ և Հին կոչելով որպէս Անտաւալ՝ տայ գուշակել և զՆոր. է և 'ի նմա եկեղեցի յանուն Ս. Թէոդորսի. բնակիչքն Յոյնք են։ — Սակաւուք հեռի յԱռաւանայ են և Ֆէրտէք վայելուչ գեօղ Յունաց, 'ի 1318 Ձ. բարձու, ուր նստի այժմ եպիսկոպոսն Տիանեայ, և Բրդունուզ? կամ Որդունուզ (Burdunuz, Ordunuz). յորոց հիւսիսոյ՝ Լիմնուսուն, Ատիրմուսուն 'ի ստորոտս համանուն լերին. և յեւլից սոցա Տիրմուսուն, Տինէկի՝ յունաբնակ գեղեցիկ գեօղ. Կէրմէյեն, Վայիսա, Մատայա, Կիւյլիւձէ [1]։

Երկրորդ չէն մեծ 'ի գաւառիս՝ իբր հինգ մղոնաւ յարևմտից հարաւոյ Նիկտէի՝ է Պօռ կամ Պուռ քաղաքաւան վայելչանիստ՝ 'ի միջի այգեաց և պարտիզաց, որք բարգաւաճ ևս էին յառաջ քան զասպատակ Ցափան օղլու Թուրքմանի՝ յառաջին քառորդի դարուս. յետ որոյ բնակիչք մերձակայ բարձրաղիր գեղջ միոյ՝ զՋուր քաղաքաւանին դարձուցեալ յիւրեանց կողմն, նուազեցուցին զտրայս բուսաբերութիւն։ Ի բաղում կողմանս Թաղիցն և գերեզմանոցին երևին բեկորք կճեայ սեանց, անշուշտ 'ի Տիանեայ բերեալք, յորոց 'ի միումն մահարձանս այս.

† ΜΝΙΜΗ ΤΩ ΦΙ<br>ΛΟΧΡΙϹΤΩ ϹΤΡΑΤ<br>ΙΩΤΩ ΘΕΟΔΩΡΟΥ<br>ΟΥΟΚϹΤΟΠΝΑϹΙΙΑ<br>ΝΕϹΙΠΟΙΗϹΙ

Յիշատակ քրիստոսասիրի զինւորի Թէոդորի... շինեաց.

վերջինթեր բառն՝ որ Թուի անուն կանգնողի մահարձանին, և ոչ հելլենացի՝ այլ օտար, անհասկանալի մեզ։ — Բնակիչք Պօռի են Թուրքք, որոց են և մզկիթք, և Յոյնք. սոքա Պորոս կոչեն զտեղին (Πόρος). ունին եկեղեցի և դպրոց։ Ի սկզբան դարուս էին աստ գործարանք վառօդի և հարիւրիւ չափ անկանք լոսելոյ, իսկ զարդիս յիշին կտաւագործքն և ներկարարք։ — Ի սահմանս Պօռի և Նիկտէի բաղում հողաբլուրք են 'ի դաշտին, Շամիրամայ հրամանաւ կուտեալք, ըստ աւանդութեան ռամկաց։ — Գեօղք 'ի սահմանս Պօռի են, Սազալա 'ի հիւսիսակողմն՝ ընդ մէջ Պօռի և Նիկտէի, Օգձուլար, Քիւլեւնէ?, և այլն։

65. Գլխաւոր չինից գաւառիս 'ի հնումն էր Տիանա (Τὰ Τυάνα, Tyana) քաղաք. 'ի հողաբլրի կառուցեալ և սա, և իբր ձեռակերտ Շամիրամայ համբաւեալ, կամ թէ ոչ նորա՝ այլոյ Թագաւորի Ասորեստանեայց. և ձանուցի ցարդ 'ի Թագաւորաց հին չինուածոցն քայքայելոց, յերի Գիլիսէ-հիսար գեօղաւանի, երիւք ևեթ մղոնօք 'ի Ս. հարաւոյ Պօռի, նման նմին 'ի բարգաւաճ և բարեբոյս սահմանի, առ նովին Գզլըճէ գետակաւ։ Հանգոյն Անտաւալի մի յիշեալնաց էր և սա արքունի պողոտային, որ 'ի Սարդիկեայ Լիւդիոյ տանէր յանցս Կիլիկիոյ և 'ի մայրաքաղաքն Տարսոն. ընդ այն էանց Կրսերն Կիւրոս, որպէս նշանակէ հեռևող Նորին Քսենոփոն, Դանա կոչելով զքաղաքն, Δάνα. ընդ այն անցին և Մեծն Աղեքսանդր և հռոմէական բանակք. ոմանք 'ի նախնի հեղինակաց գրեն և Թոանա, Thoana [2], որպէս թէ չինեալ 'ի Թոասայ Թագաւորէ Տաւրոսի կամ Թրակաց. մականուանեցաւ երբեմն և Եւսեբիա տաւրոսական, իբրև սրբազան իմն քաղաք, վասն մեծի մեհենի միոյ Արամազդայ՝ առ սրբազան աղբերաւ, որ փարախաւ հեռի 'ի Հօ. Եւ. քաղաքին բղխէ 'ի լճակէ կամ յաւազանէ ուստեք, 100' ունելով երկայնութեան և 50 լայնութեան. հանապազ պղպջալով ջուրցն և ոչ երբէք զեղանելով արտաքս, չուրջ պատեալ մեծամեծ հատորօք դրուագեալ վիմաց, յորոց չատք վարեալ են 'ի կազմութիւն փողրակի 'ի պէտս ջրաղացից. բայց և ազուգայ մի մեծ կրաքարեայ գործեալ էր հռովմայեցւոց առ 'ի բերել զՋուրն 'ի քաղաք անդր, եօթն մղոնաւ 'ի բացուստ՝ 'ի Հս. Եւ. որոյ ցարդ կանգուն կան յիսնիւ չափ կամարք. մեծագոյնք և բարձրագոյնք՝ մերձագոյն 'ի քաղաքն, ցածագոյնքն՝ առ բլրին՝ ուր բղխէ աղբիւր անհատահոս՝ Թափեալ յաւազան 40 կամ 50 Ձ. երկայն. Գըզլար կէօլ կոչի այժմ լճակս այս։ Սակաւուք հեռի յարևմտակողմն 'ի ստորոտս բլրոց՝ կայ այլ աղբիւր բղխեալ 'ի խառոչէ քարաժեռի 'ի բոլորակ խորուղ՝ իբր 30' տրամագծաւ, և անցեալ ջրոյն ընդ երկրաւ ընդ 40 կամ 50', ելանէ արտաքս և գործէ մեծագոյն ևս ջրժողով լճակ, որոյ և եզերք՝ մասամբ ձեռագործ յարդարեալ են, որպէս Թուի 'ի պէտս ոռոգման ագարակաց։ — Ոչ սակաւ նշխարք հին չինուածոց են յաւանին և չուրջ զնովաւ, կճէից և այլ ընտիր քարանց, հիմունք տաճարաց և սիւնք սրբատաչք, յորոց զմին միայն զորացի ռնով եօթն Ձ. բարձր՝ կանգուն եգիտ ճարտարն Գեսիէ. և յետ նորա եկեալ Հէմիլդըն անգղիացի յամի 1837 (4 օգոստ.), ետես և զգործարանս բորակի՝ զոր յիչէր մերս Ինճիճեան՝ երեսուն ամօք յառաջ, և ասէին արդ ամի ամի 40,000 հօխայ գործել։ — Հարաւակողմն աւանին ճախճախուտ է և խոնաւ, բազում առուաց և աղբերաց սեաւ և սկախառն ջրովք ողողելով զվայրն։ Երկու մղոնաւ հեռի 'ի չինէն են և այլ ևս դառնահամ աղբերք, և մերձ 'ի նոյնս՝ լճակ կամ ոփ մի 'ի գլեր վայրի 40' տրամագծաւ, դառն և պղտոր ջրով, պղպջակուտ և ցայտուկ, մանաւանդ 'ի կենդրոնին, ուր և ոտնաչափ բարձրութեամբ 'ի վեր պուղի սեւն ջրոյ ըստ ուժգին չառաչմամբ, այլ ոչ բնաւ զեղանի արտաքս, և ոչ առու արձակէ. Ջուրն ծծմբահոտ է և ցուրտ։ Սա համարի համբաւեալն 'ի նախնեաց և սրբազանեալն Ասմաբէոն աղբիւր (Asmabeon), առ ո-

[1] Քննութեան բանասիրաց յանձն լիցի պատճառ և իմաստ ձևաւոր վերջաւորութեան, որով յօդեալ են ոչ սակաւ անուանք գիւղից կողմանցս այսոցիկ։

[2] Թերևս չիցէ անդէպ կարծել զառաջինն Անահտայ նուիրեալ զքաղաքն, ըստ անուանն որպէս կոչի առ Լատինս գիցուհին այն, Diana, և յաջմն ընթեռնլով գնշանագիրսն՝ Անախտ լսի։

րոյ եզերբ կանգնեալ էր մեհեանն Արամազդայ։ Դոյզն ինչ հեռի յաղբերէս՝ ամբառնայ 'ի դաշտին բլրակ մի գաճքարեայ և ալապաստրեայ երակօք, նշանակ հանքային աղբերաց. յոր սակս և թուի գործեալ առ նմին գեղեցիկ կճեայ բագին մի և խորշ լայն 'ի վերայն։ Նն և յայլ մերձաւոր բլուրս քարափոր այրք՝ երբեմն գերեզմանք, և առ քրիստոնէիւք փոխեալք 'ի մատուռս, յորս բազում խորշք են և դարանք։ — Յառաջին դարս՝ Տիանա թեմ մի էր մեծի եպիսկոպոսապետին Կեսարիոյ, այլ 'ի կէս Դ դարու յերկուս բաժանեալ աշխարհին՝ Տիանա առանձինն արքեպիսկոպոսանիստ կարգեցաւ Բ Կապադովկիոյ. ընդ որ տհաճէր և գանգատէր յոյժ Մեծն Բարսեղ, և բազում վէճք եղեն ընդ երկոսին նահանգսն վասն թեմիցն բաժանման։ — Հռչակեցաւ յոյժ քաղաքս վասն 'ի նմին ծննդեանն և քարոզութեան և ստապատիր հրաշից՝ Ապողոնիոսի խաբեբայի յԱ դարու, զոր հեթանոսք կամէին հակառակ կանգնել Տեառն մերոյ Յիսուսի, և Փիլոստրատ ոմն գրեաց յերկար զվարս նորա և զառասպելս. զորս թողեալ առասպելասիրաց՝ հաճոյասցին մեզ մի անգամ ևս բանք Ս. Լամբրոնացւոյն՝ երկամեաւ յառաջ քան զմահն (1196) գրեալք՝ զԼևոնէ Մեծէ, 'ի յիշելն զնորոգ շինութիւն Լուլուայ ամրոցի, եթէ « ընդարձակեաց նովաւ զՀայաստանեայս՝ թագաւո-
» րի Լևոնի ձեռն, և նովաւ կարողացաւ Բ Կապադով-
» կիոյ, յորում մայրաքաղաք Տիանայ. արտահանեալ
» զնորաշէն ամուրն 'ի փառս Քրիստոսի և 'ի զօրութիւն
» քրիստոնէից »։ Թէ յառաջ թէ յետոյ հաստատեցաւ 'ի նմին եպիսկոպոսական աթոռն Հայոց՝ ոչ գիտեմ հաւաստեաւ, բայց զի էր 'ի սկզբան ԺԴ դարու Ներսէս եպիսկոպոս Տիանեայ, և յետոյ յամի 1341 Գրիգոր եպիսկոպոս 'ի ժողովին Սսոյ՝ առ Մխիթարաւ կաթողիկոսիւ։

Նման ինչ Տիանեայն աւերակաց կարծելի է և երիւք մղոնօք չափ յելից հարաւոյ նորին 'ի գեղջն Գարաճա-էօրէն, զի նշանակէ անունն Սև աւերակս. այլ որպիսիս՝ ոչ գիտեմ։ — Եւ 'ի սորա ելից հարաւոյ և յարևմտեան ստորոտս Գըրգ-պունար լերին՝ կայ գեօղն Պօղազ, որոյ անուն յայտ առնէ զանձուկ փողն, այսինքն զնրբուղի ճանապարհն՝ որ ընդ մէջ Տիանեայ և Կիլիկեան մտից։

Միջոցն Տիանեայ և Առակլեայ 'ի հիւսիսային ստորոտս Պուլղար լերանց՝ սակաւածանօթ է. 'ի թիկունս նոցին՝ յայնկոյս վաղ տեղագրեալ կողմանց արևմտեան հովտաց Սարոսի, իբր չորիւք մղոնօք հեռի յՈւլու-գըշլայէ՝ 'ի հիւսիսոյ կուսէ նշանակի հանգրուան մի 'ի լեռնամիջի, Ալաճ-չիֆտլիկ անուն, յորմէ նոյնքան հեռի ընդ արևելս՝ Քէօրէ? (Köthey) գեօղ. ընդ արևմուտս՝ երեք մղոնաւ յԱլանայ՝ Շիգ քէօյ?, և 'ի սմանէ նոյնչափ ևս ընդ արևմուտս՝ Զայաճ գեօղաւան 'ի վերայ ճանապարհին որ ընդ Առակլի և Տիանա, որ և սահմանագլուխ համարի առաջնոյն, անջրպետ ունելով զթևս Պուլղար լերանց՝ 'ի հարաւոյ 'ի հիւսիս յառաջելոց, յորոց յահեկէ ջուրքն հոսեն ընդ հիւսիս արևմտից յԱռակլի, և 'ի ձորակս նոցին են արդ յիշեալ տեղիքդ, և որ 'ի հիւսիսոյ Զայանայ փարախաւ հեռի թէքքէ հանգրուան։ Ի Զայան՝ ուղևոր ոմն եւրոպացի յամի 1833 համարէր 200 տունս և 1000 բնակիչս. յետ 40 ամաց համարէին 2000 ոգիք, յորոց կէս կորեաւ 'ի սովու կարէձմերայնոյ 1873-4 ամին, հանդերձ 10,000 ոչխարօվք և արջառօք նոցին, և մշակութիւն նուաղեաց. բայց հովիտքն և բլուրք՝ հռչակին յոյժ ծաղկազգեստ լինել և խնկահոտ 'ի գարնայնի [1]։

## ԱՌԱԿԼԻ ԿԱՄ ՀԵՐԱԿԼԷԱ = ԿԻՒԲԻՍՏՌԱ

66. Արևմտեան հարաւային մասն Տիանեայ հին գաւառի համարի և այժմեանս Էրէկլի՝ վիճակ Ղօնեայ գաւառի. որ և ըստ դրիցն՝ 'ի հնումն միջասահման և բաժանորդ թուի եղեալ մերթ միոյ և մերթ միւսոյ երից կամ չորից աշխարհացն՝ Լիկայոնիոյ, Կիլիկիոյ, Կադաոնիոյ և Կապադովկիոյ, և յետնոյս յաւէտ դրեալ 'ի Հռովմայեցւոց, 'ի զատուցանել սոցա 'ի տասն գաւառս կամ նախարարութիւնս զաշխարհն զայն, և յետոյ յաւելլով մետասաներորդ՝ զվիճակս Կասդաբալա և Կիւբիստռա քաղաքայ առ լերամբք Տօրոսի. յարդեացս քննութենէ նոյն համարի Կիւբիստռա և Հերակլէա։ Ոչ է մեզ փոյթ ճշդել զայդոսիկ, շատացեալք գիտել՝ զի յարեցաւ և այն 'ի կալուածս մերազգեացս տեարց Կիլիկիոյ, և թէպէտ քաղաքն՝ զոր Առակլի կոչէին՝ (ըստ որոց և մեք), ոչ ընդերկար ժամանակս, այլ արևելակողմն վիճակին՝ յերկարագոյնս. որ և յայսմ կողմանէ սահմանէր Պուլղար լերամբք, որպէս և 'ի հիւսիսոյ արևելից՝ վերայիշեալ թևովք նոցին՝ անջրպետօք ջուրց Սարոսի. 'ի հիւսիսոյ՝ վիճակաւ Նիկտէի, յարևմտից՝ պարըսպեն զայն Գարաճա լերինք, առ որովք 'ի մեծէ Աջի լըճակէ (Դուզլա կէօլ) ամբառնայ կոնաձև լեռնակ չիջեալ հրաբուղխ, այլատարազ ցռկաձև հրաւանդանաւ, և 'ի ստորոտն խաւք են քարաղի, զոր հատանեն բնակիչք մերձակայ Գարապունար գեղջ. իսկ 'ի հարաւոյ՝ այլ թևք Տաւրոսի զատուցանեն 'ի բնիկ Գարամանն գաւառէ կամ 'ի Լարանդայ։ Ոստ մի ևս առանձնակ 'ի Պուլղար լերանց՝ յարևմտից նախածանօթ գիւղիցն Դարպասայ, Էմիրլէրի և Քիլա-քէօյի, ձգեալ ընդ արևմուտս՝ իբր ընդ 15 մղոն, Գափագըր կոչմամբ և ըստ ոմանց Իսրիգ տաղ, զուգահեռական դրից մեծի գօտւոյն Տօրոսի, գործէ ընդ նմին ձորահովիտ անձուկ, յոր խաղայ նովին ուղղութեամբ 'ի Հր. Եւ. ընդ Հս. Մ. գետն Առակլեայ, յատուկ անուամբ կոչեցեալ 'ի Թուրքաց Խօճա-չայ [2], որ և 'ի հարաւոյ կուսէ քաղաքին անցեալ յարևմուտս՝ թափի յԱգ-կէօլ լիճ մեծ, յընդունողն Գըզըլճէ կամ Գըզըլ-ըրմագ գետոյ Նիկտէի և Տիանեայ։ Յաջմէ սորին և Գափագըր լերանց՝ խաղայ այլ վտակ՝ Քիրլիջա? պօղազ կոչեցեալ (ըստ Չիհաչէֆի), և դարձեալ ընդ հիւսիս՝ ոչ գիտեմ 'ի Գըզըլճա՞ խառնի եթէ յայլ ջուր։ Ի ձորակին՝ առ ստորոտովք Պուլղարայ՝ չորիւք մղոնօք չափ 'ի հիւ-

[1] Տէվիս, 253։

[2] Ըստ Չիհաչէֆի։

ափոյ Գիլա-քէօյի կայ իջեւան մի խանգարեալ՝ Քամէրլինն խան կոչեցեալ[1], յանկայի վայրի։ — Երկու մղոնաւ 'ի Մ. հարաւոյ սորին 'ի ստորոտս Գափագըը լերին 'ի միջի անտառաց երեւի գեօղն Պոռնա կամ Պուռնասա։

Աշխարհակալն Լեւոն յառաջ կամ յետ թագաւորութեանն, ընդ այլս՝ «Լառ զԱռակլիս եւ զԽաչերիս, եւ »ընդ գանձուց փոխանակեաց բազում ամրոցս եւ գե-»ղեակս», որպէս ասանդէ յիշատակագիր մի. զորս բանս՝ Վահրամ յեղու 'ի տաղաչափական վիպասանութիւն, այլ ոչ ուղիղ իմանալով՝ զամրոցն եւ գիւղեակս ընդ քաղաքին շփոթէ, եւ ասէ.

«Հերակլիս եղեւ կալեալ
Եւ ընդ գանձուց փոխանակեալ»։

Մարթ է թէ յետ ժամանակաց այնպէս արար Լեւոն, որպէս եւ վասն Կեռարիոյ. սակայն ոչ այսպէս վաղվաղ երեւի թողեալ եւ զՀերակլիա. քանզի եւ 'ի յետին ամս կենացն՝ ըստ Սմբատայ պատմչի, Քէյքաւուզ սուլտան եկն 'ի վերայ, «վասն շատ աւերոյն՝ զոր արարեալ էր Լե-»ւոն թագաւոր՝ խրեանց, եւ առեալ էր զԱռակլի եւ »զԼառնդա». այլ ոչ մինչեւ պատմիչքս՝ թէ յայնժամ ընդ Լուլուայ բերդի եւ այլոց ինչ անզեաց՝ եթող Լեւոն եւ զԱռակլի. այս յայտ է՝ զի ոչ եւս էր այն 'ի ձեռս յաջորդի նորին Հեթմոյ, թէպէտ ունէր եւ առ զմեան ինչ եւ ամրոցս 'ի գետաշրջակի նորին. եւ յետ դարձին 'ի Թաթարաց, յամի 1255, յանկարծ հակառակորդին «աշխարհա-»ժողով արարեալ... որ եւ ասէին թէ ժողովեցան իբրեւ »բիւրս տասն, եւ արշաւեաց նորաք 'ի Գաւառն Հոռո-»մոց, առ ստորոտով լերինն Տաւրոսի, մերձ 'ի քաղաքն »Առակլի, 'ի փողն Եկեղեցեաց եւ 'ի Մուռանդին. »եւ անդ շահեցան ոչխարս եւ ոչխարս, ձիս եւ ջորիս, ծա-»ռայս եւ ոսկիս. եւ բազում աւարաւ դարձան յաշխարհն »իւր. եւ արարեացն ոչ ուկան աւարս»։ Ոչ հանդուրժէր անշուշտ սուլտանն Իկոնիոյ այսպիսի տուգանաց. եւ պարաց զանեալ արշաւէր ասէ եւ ինքն 'ի սահմանս Հեթ-



42. Խառնարան Գարաբունար լերին. (տես յէջ 173).

մոյ առ ստորոտով լերանցն. եւ անդուլ լինելով երկուսեքին միջի հակառակութեանն, խորհեցաւ Հեթում աշխարհակալ Թաթարաց հրամանաւ հաստատել ճշգրտիւ սահմանս. չոգաւ առ Հուլաղու դան՝ եւ եբեր հրովարտակս, յամի 1263. «որք եկեալ գինի Թագաւորին մինչեւ յԱ-»ռակլի, եկն անդ եւ սուլտանն Հոռոմոց Ըռուքնատինն. »եւ եղեն անդ աւուրս ինչ, եւ եդին դաշինս ահեղ երդ-»մամբ, եւ արարին խաղաղութիւն, եւ դարձան իւրա-»քանչիւր 'ի տեղի իւր»[2]. — Ի միջոց ժամանակի երկոցուն դիպացս Հեթմոյ՝ միւս եւս հանդիպեալ է յայտ

1 Kanimit ըստ Չէհօլէֆի. Kamerlin ընթերցեալ յայլմ.

2 Պատմիչն Կիլիկիոյ.

վիճակի յամի 1258, որ սուղ զկնի յիշեցի 'ի կարգի տեղագրութեանս։ Դարձեալ և յամի 1276-7 յիշի Թուրքմէնից կողոպտել առ տեղեաւս զկարաւան վաճառականաց և կոտորել ոգիս ութսուն, յորոց մին էր գործակալ Խասպէրտ Խազիրի տան, և ունէր 120,000 դենար, և չորք ոմանք միայն զերծան։ — Հերակլիա, որպէս առ մերայինս Առակլի՝ և 'ի Թուրքաց կոչի Էրէկլի. և է 'ի տափարակ բլրի կառուցեալ 'ի 1038 Ք. բարձու, վայելուչ ըստ բնագեղ տեսլեան, 'ի դալարազուարճ վայրի, 'ի մէջի այգեաց և կաղամախեաց, այլ ոչ մեծաշէն. տունս իբր 1000 ունելով Թուրքաց, և 50 տուն Հայոց, ըստ լսելոյ Հէմիլդընի անգղիացւոյ, որ գիշերօթեացն աստ ընդ վրանաւ իւրով, յամի 1837 (5 օգոստ.), զի յոյժ գծուծս եգիտ զտնկունս տեղւոյն և աղտեղի զփողոցս. ուր յիշէ միայն զմզկիթս և զփայտաշէն կամուրջն. սակայն այնքան վայելչագեղ երևեցաւ նմա արտաքին կերպարանն՝ մինչև անգղիատեսիլ կոչել (English-looking scenery)։ Հնգետասան ամօք յետոյ, համազգի նորին Էնզուըրտհ՝ որ նոյնպէս գծուծ ասէ զշէնն, և 800 տունս միայն Թուրքաց, և 50 Հայոց[1], հաճեցաւ ագանել 'ի տան միոյ 'ի մերայոցս (24 Նոյեմբ. 1838), զորս և հիւրասէրս կոչէ. և աւելի ինչ՝ միայն զփոքր վաճառանոցն յիշէ[2]։ Ի նոյն աւուրս և հռչակեալն յայժմուս բռուսիացի սպայն Մոլդքէ՝ եկն այսր, և սմա ևս հաճոյ թուեցաւ տեսիլ քաղաքին, զոր թաղեալ ասէ ընդ ծառովք՝ 'ի ստորոտս լերանց, յորոց վտակ գեղեցիկ իջեալ ընթանայ 'ի նկարագեղ հովիտ, և յետ երկժամեայ գնացից՝ դառնացեալ սուզի 'ի ճահիճս[3]։ Եօթնասուն ամօք յառաջ քան զսա էանց ընդ այս և Նիպուր գերմանացի, և 1700 տունս ասէր տեղւոյն։ Ա՛յլ ոմն յետ նորա (Ալի Պէյ սպանիացի) յիշէ գովութեամբ զպտուղս պարտիզացն և մանաւանդ զտանձն։ Փռանկն Պերդրանտոն որ չորիւք դարուք յառաջ քան զսոսա էանց ընդ Առակլի (յամի 1432), երբեմն պարսպապատ և բերդաւոր լեալ ասէ զայն, այլ յայնժամ խանգարեալ յոյժ, և յընդարձակ դաշտին՝ յարում բլուրք ինչ երևէին որպէս կոհակք 'ի մակաւասար ծովու, բազում գեօղս Թուրքմանաց։ — Յետին ծանօթ այցելու տեղւոյս, Տէվիս անգղիացի, ստուգեաց 'ի բժշկէ տեղւոյն (Տրիպօլսեցի Սալէհ Էֆէնտի), զի իբրև 650 կամ 700 տունք էին Թուրքաց, և 3000 ոգիք, իսկ Հայք 150 ոգիք միայն. բայց այլ ոմն ասաց 50 տանց Հայոց լինել անդ, իսկ Յունաց՝ սակաւ։ Յիշէ գովութեամբ և զերէցն Հայոց, զոր մեծարէին և Թուրքք։

67. Որքան բարգաւաճ են մերձաւոր սահմանք Առակլեայ արգասաբեր բուսովք և սաղարթագեղ պուրակօք, այնքան և հեռաւորքն կերպարանս ընծայեն աննմանս. հարաւայինն և արևելեան կողմն լեռնաւէտ և մայրեոր, արևմտեան հիւսիսայինն ճախճախուտ և խոպան, այլ զարդարեալ յոյժ երանգ երանգ հրաշագեղ ծաղկօք, մանաւանդ կարմրերփեան և ոսկեգոյն[4]. արևելեան հիւսիսայինն նշանաւոր ևս՝ ծծմբային աղբերօք, իբրև հինգ մղոնաւ չափ հեռի 'ի շինէն՝ 'ի ստորոտս 60' կամ 70' ցածուն բլրակաց՝ գաճուտ և կրուտ զանգուածով, առ որովք խրճիթս սակաւս հաստատեալ է Թուրքմանաց որսարածից յամարանի։ Ի հիւսիսային արևմտեան պարու բլրակացն է պատառուած մի երկու կամ երեքհարիւր կանգնաւ չափ, յորմէ իբրև 'ի տասն ականց բղխեն սկաւառն աղբերք, և ժողովին նախ յաւազանս կամ 'ի գուբս ոմանս. ապա անդրդտանալով ջուրցն՝ վերացուցանեն կոնաձևս 'ի գետնի, և ծածկեալ ընդ նոքօք՝ հոսին և ելս խնդրեն ընդ այլ կողմանս, լսելի առնելով զգլրդանան ընդ երկրաւ, որպէս և պղպջակս յերեսս նորին արձակելով և նուրբ շոգիս։ Աղուտ և ծծմբուտ է համ ջրոցն. և որպէս յայտնի յասացելոցս՝ փոփոխին կերպարանք երկրին կամ դիրք աղբերացն, որք յառաջագոյն 'ի Հր. Եղ. կողմն յաճախապէս երևէին, և արդ ցամաքեալք՝ 'ի Հս. Մ. կողմն աճեն։ Կիսաբոլոր իմն է ձև աւազանացն կամ գբոց, ըստ յաճախելոյ նստուածոյ հողոյն և աղկի՝ բարձրացելոց երկու կամ երեք ոտնաչափ. բայց բազմաթիւ են և մանունք՝ մի կամ երկու թզաչափ տրամագծաւ. և զարմանալի այս է, զի թէպէտ մերձ առ իրեարս են, այլ որիչ համով. կէսք միայն աղի են, այլք ծծմբահամ, և չատք ծծմբախառն տղմուտ կամ գաճուտ, նոյնպէս զանազանեալք և 'ի չափ ջերմութեանն. ոմանք բնաւ ցուրտք են, այլք ջերմ 30' Ռէօմ., որք և շոգի արձակեն, և 'ի յուզելն՝ փրփրին։ Տեղացիքն Քիւքիւրտլիւ կոչեն զսոսա, որ է ծծմբահամս կամ ծծմբայինս։ Առ խոռոչիւ կամ պատառուածովն՝ կազմակերպեալ են 'ի հոսանաց անտի՝ պաղածք պէսպէս այլատարազ ձևօք, և ուրեք 'ի վիժից ջրոցն՝ խողովակք աղի նրբինք, ջուր 'ի միջի ունելով, այլ յոյժ դիւրաբեկք. նշանաւոր ևս են յերեսս ջուրցն ծփական գնտակիկք կեղևայինք կամ ուլունք, որք են պղպջակքն պատեալք սկոյին նիւթովք, և յանգայտանալ ջրոյն՝ սերտեալք թանձրագունիւք, սահունք և ծփունք, այլ այնքան նրբակեղևք՝ զի անդէն ընդ հալելն՝ պայթին և փշրին. բայց մնալով՝ ևս քան զևս թանձրանան, մինչև ծանրանալ և իջանել 'ի յատակս ջրոյն և կռուել յիրեար, ոմանց դատարկ մնալով այլոց խցեալ. նման իմն ուլանց ջերմկացն Բագրևանդայ, առ ակամբք Արածանւոյ։ Նշանաւոր է և ցուրտ աղբիւր մի որ 'ի Հս. Եղ. ստորոտից ժայռիցն իջեալ՝ ծածկի 'ի ճախճախուտս դաշտին։ Ի Հս. Մ. կողմն ամբառնայ բլրատափ մի սևագոյն կոպճով, նման բլրոյ Ասմարէտն լճակի. յայլում առանձնակ գաճուտ բլրի՝ է գոգ կամ ծակ մեծ, ուստի ասէին լսել ձայնս սահանաց ջուրց, այլ Հէմիլդըն քննեալ՝ լուաւ և ոչ ինչ։ Այս ամենայն երևոյթք բնա-

1 Այլ ոմն ճանապարհագիր՝ հակառակ սոցին՝ յամի 1833 նշանակէ յԱռակլի տունս 5 կամ 600, և բնակիչս 3000, յոլովագոյն մասամբ Հայս։

2 We were lodged in an Armenian house, the tenants of which were not inhospitable. — AINSWORTH. Tom. II, 71։

3 Langten wir zur Eregli an, einem unter Baümen begrabenen Städtschen am Fusse der Gebirge, von denen ein prächtiger Bach in einem romantischen Thale herab rauscht, der aber schon nach zweistündigen Laufe in der Ebene bitter und salzig wird und sich in einen Sumpf verlauft ». — MOLTKE, Briefe, 322.

4 The flowers were truly wonderful in quantity and colour. There were flowers of various tints of red and yellow, eight to ten species at least, and amongst them some of the most brillant red or yellow that can be conceived. There were flowers of crimson, orange and scarlat, mauve, pink and lake; it was a veritable flower garden. Yellow trefoil and clover grew in the greatest profusion. — DAVIS, 265.

*թեան քաջիկ յայտ առնեն զհրաբղխի ներգործութիւնս. որոյ և կենդրոն ակներև նշմարի 'ի Հս. Մ. ծայր դաշտին Հերակլեայ՝ լեառնն Գարաձա, իբր տասն ժամուց հեռաւորութեամբ՝ 'ի ծծմաղբերաց աստի։ — Քննութիւն արդի գիտնոց աշխարհագրաց և ուղևորաց հաստատէ, որպէս և յառաջն յիշեցաք, զայս քաղաք նոյն լինել (թէպէտ ամենևին օտար անուամբ) ընդ* Կիւբիստռայ, *որ մի յեպիսկոպոսական թեմից էր Կապադովկիոյ, յանուանեալ նահանգին Կադառնիոյ, ընդ մէջ Կիլիկիոյ, Կապադովկիոյ և Լիկայոնիոյ։ Զայս ընտրեաց Կիկերոն 'ի կուսակալութեան կողմանցս Կիլիկիոյ՝ յիւր ձմերոց և 'ի բուն բանակի զգուշութեան երկրին, յարշաւանաց Հայոց դաշնակցելոց ընդ Պարթևաց. և կոչէ զայն 'ի սպառուած Կապադովկիոյ և ոչ հեռի 'ի Տաւրոսէ.* In Cappadocia extrema, non longe a Tauro, apud oppidem *Cybistra* castra feci [1]. — *Օտարազգի սրբագիրք 'ի Կիւբիստռայ ասեն լինել զսուրբ ճգնաւորն* Յովհաննէս Գբեցի, *և զտեղին՝ Քաղաք Հայոց կոչեն* [2], *իսկ Յայսմաւուրք մեր 'ի Կեսարիոյ Փիւնիկեցւոց ասեն ըզՍուրբն։ — Թողեալ այլոց զմանր քննութիւն քաղաքին և զքաղաքացւոյ, ակն արկցուք յայլ ինչ չէնս միճակին, սկսեալ յարևմտից հարաւոյ՝ 'ի գլխոյ գետոյն և հովտին Խօձայ, յոր սահման մերձեցեալ էր մեր տեղագրութեամբ արևմտեան օժանդակաց Սարոսի* (*յէջ* 134), *և բոլուց Պուլղար մատէնի. յորոյ գրեթէ 'ի կռան լերինն՝ են աղբերք գետոյդ այդ Առակլեայ։*

*Առաջին արևմտագոյն գեօղ գետահովտիս նշանակի Եսապըգ գայյալը? կամ Եսար գայյալը (Տափակ ժայռ), 'ի հարաւային ստորոտս Գափագըլը լերին, երկու մղոնաւ ևեթ 'ի հարաւոյ Պոռնայ կամ Պուռնաստայ. նոյնչափ ևս հեռի յարևմտից՝ առ գետեզերբն է Քեօսէլի* [3] *յաջմէն, որպէս և առաջին գեօղն. յայսմ կողման է և անձուկ ճանապարհն ընդ ձորեզրն՝ որ տանի իջուցանէ յԱռակլի. և մի ըստ միոջէ առ գետեզերբն են յետ Քէօսէլէի՝ անծանօթ մեզ վայրք, հաւանօրէն և թիւրեալ անուամբ նշանակեալք 'ի քարտէսի, Ճէտէսի?, Գուզգրա, Գարա Եուսուֆ, Միւնաննէ* [4], *որ յունական հնչեցուցանէ անունն, և տայ կարծիս հնութեանց։ — Երիւք մղոնօք 'ի ստորև՝ աւերակք են Զանափայ գեղջ. յորմէ էր, ըստ ոմանց 'ի Յայսմաւուրաց մերոց՝ Ս. վկայն Դուլաս, «'ի գաւառէն* Զենեփի, *յերկրէն Կիլիկեցւոց», զոր յետ չարաչար տանջանաց՝ գետամոյն արարին, և չունք երկու հանեալ պահէին զմարմինն, մինչև եկեալ հաւատացելոց բարձին և թաղեցին պատուով. բայց այլք ասեն լինել զՍուրբն 'ի քաղաքէն Զեփիւռի Պրետորիադայ, որ է Զեփիւռիոնն ծովեզերեայ՝ նիստ պրետոր իշխանի* [5]։ *Արժանի են քննութեան աւերակք Զանափայ. յորմէ մղոնաւ կամ դոյզն աւելի 'ի Մ. Հս. 'ի ստորոտս Գափագըլըի կայ հանգրուան մի Չիֆթլիկ (ագարակ) կոչեցեալ. և անտի երկու մղոնաւ բացագոյն յարևմուտս՝ 'ի ստորոտս անջատ լեռնակի՝ աւերակք Թոնդ* (Tont) *գեղջ, յորոյ հարաւոյ առ գետեզերբն աղօրիք են. փարսախաւ ևս 'ի ստորև 'ի հիւսիսոյ արևմտից 'ի ստորոտս լեռնաբլրոց, չորիւք ևեթ մղոնօք յարևելից հարաւոյ Առակլեայ՝ Պարտալա գիւղ, որ յիշեցուցանէ զՊարադյա,* Baratta, *կամ Բարատացւոց* (Baratensium) *մայրիս՝ մերձ 'ի Կիւբիստռա, ուր ճգնէր ասեն Խռիւսոս կամ Կիրակոս ճգնաւորն, որ թաղեաց զՍ. Յովհան Գբեցին՝ 'ի յատակ գբին վերացելոյ և անդէն ստորիջելոյ։ — Հինգ մղոնաւ 'ի հիւսիսոյ արևելից Պարտալայ և սուղ աւելի 'ի Հս. Եւ. Զայանայ՝ 'ի ստորոտս բլրոյ՝ է Գուզունձա գիւղ։*

*Դարձցուք 'ի ձախակողմն գետոյն ըստ ընթացից նորին 'ի վերուստ 'ի վայր՝ 'ի քաղաքակողմն խաղալով։ Նշանակեալ տեղիք են Զագալ-քէօյ, կիսով փարսախաւ 'ի հարաւոյ Ճէտէսիի, և Վեննէկ՝ կիսով փարսախաւ յԵւ. հարաւոյ Զանափայ, ուր լերինք մերձեալ 'ի գետեզրն՝ հազիւ անցս ճանապարհի թողուն։ Ի ստորոտս կարմրագոյն լերանց առ ականակիտ և կարկաջասահ ձկնաշատ վտակաւ միով՝ փարսախաւ չափ 'ի Մ. Վեննեկայ և երկու մղոնաւ 'ի գետոյն՝ կայ աղիւսակերտ գիւղն Իւպրիզ, 700 թուրք բնակչօք, յորոյ անուն և լերինք կողմանցն կոչին, ըստ Յունաց* Ὕβρις. *Նշանաւոր յոյժ է ատտանօր հին քանդակ-պատկեր մի նման Ասորեստանեայցն, 'ի մեծի տաշեալ տախտակի, յերեսս կարմրագոյն որձաքար ձորեզեր, 10՛ աւելի կամ պակաս բարձր յերեսաց գետակին, խոշոր այլ ոչ անարուեստ, 4 կամ 5 մատնաչափ բարձր քանդակեալ 'ի վիմէն. պատկերն մեծ բարձր է իբր 20՛, փոքրն 12՛, կարևոր ինչ նշանակաւ, որ անյայտ մնայ առ 'ի մէնջ, մանաւանդ զի չէ քաջ ստուգեալ ձև և տարազ նշանագրացն՝ որք երևին 'ի վերոյ պատկերին, ոչ զեգիպտականացն բերելով կերպարանս և ոչ զբևեռաւորաց, այլ զանուանելոցն արդ համաթեանս. երևէր և այլ նմանաձև արձանագիր ստորև քան զքանդակ-պատկերն, այլ յոյժ եղծեալ, և ըստ ասելոյ գեղջկացն՝ կային խոնարհագոյնք ևս, և 'ի նուազել ջրոց գետակին երևէին։ Նկատելով զխայրիս որ 'ի ձեռս մեծի պատկերին, զողկոյզս խաղողոյ և զհասկ ցորենոյ, յիշեցուցանէ ոմն 'ի ստորագրողացն՝ զԱմանորաբեր դիս Հայոց. այլ ինձ գեղեցկանուն տօնից Հայկազանց՝ գեղեցկագոյն ևս պիտոյն եղեալ տօնելիքն։ Զայս պատկեր 150 ամաւ յառաջ (1736) տեսեալ և յիշեալ էր սուեդացի ուղևորն Օդդէր, և ասէր զոլ առ ակամբք գետակին բղխեցելոյ յԱյրտուզ (Արտաւազդ?) լեռնէ, և կոչիլ պատկերին՝ Այպրիզ, խանգարմամբ Այպրինոս անուան, որպէս կոչէր տէր տեղւոյն։ Տէմլիս ստուգաբանէ 'ի պարսկականէն* ابريز *ապ-րիզ, իբր թէ ջրհան կամ ջրթափ։ — Ի մզկթի գեղջն են խոյակք ինչ և սիւն մի՝ կճեայք, այլ ոչ գիտեն ուստի՛ բերեալք իցեն։ — Ի վերոյ գեղջն 'ի դըժուարամատոյց գաւակի լերին միոյ կայ կիսաւեր մատուռն վայելուչ ձևով, յորում նշմարին և հետք որմնանկարուց, և առընթեր երկու փոքրիկ շինուածք՝ իբրու մենարանք։ Իցեն թերևս հետք հնութեանց և 'ի հնա-*

1 Կիկերոն, Թուղթ առ Կատոն, ԺԵ. Դ։

2 Բոլլանդեանք խորագիր կարգեն վարուց Սրբոյն՝ յ՛30 մարտի, De S. Johanne in Puteo, Eremita in Armenia.

3 Այսոքիկ ըստ քարտին Ֆիշէրի։

4 Ցուցէ յեկեղեցական վիճակագրութեան եպիսկոպոս Սինիանդու, Σινιάνδου, 'ի նահանգի Պիսիդիոյ։

5 Ի Յայսմաւուրս Վասլէ կոչէր (յունիս ԺԵ), Դուլաս իշխան նախարար կոչի Կիլիկիոյ։

նուն Էսկի-Աւան գեղջ, որ նոյնպէս 'ի խորշս լերանց կայ առ վտակի միոյ, փարսախաւ 'ի Հր. Եւ. Իպրիզայ և երկու մղոնաւ 'ի Հր. Վեռանեկայ: Նոյնչափ եւս՝ փարսախաւ միով բացագոյն՝ յարեւմտից Իպրիզայ 'ի ձորամիջի լերանց առ այլով վտակաւ՝ է Տետէ-քեպիր գիւղ. և գրեաթէ կից նմին 'ի հիւսիսոյ՝ Ղայսէ քէօյ. և 'ի սմանէ մղոնաւ չափ 'ի Հս. Ե. և նոյնչափ 'ի Մ. կուսէ գետոյն՝ Տուրղաս: Աստի փարսախաւ չափ 'ի ստորև մերձ 'ի գետեզրն՝ Մարիձա. և 'ի սմանէ կիսով փարսախաւ 'ի Հս. Մ. Եաւըլը կամ Եազըլը գիւղ, յորմէ երեք կամ չորս մղոնաւ յարեւմուտս 'ի լեռնակողմն՝ Մամեռա գիւղ: Մերձագոյն 'ի քաղաքն իբր երիւք մղոնօք 'ի Մ. Հս. Պարտալայ՝ 'ի գետամէջս՝ է Պէյլի-աղաճ գիւղ. իսկ 'ի հիւսիսոյ Առակլեայ բացագոյն վեց կամ եօթն մղոնաւ՝ գլխաւոր գեօղ զճանապարհայն՝ է Պեկդիկ (Bektik) աւան, յորում՝ յառաջ քան զձմեռն և սով 1873-4 ամի, 400 տուն բնակիչք էին, և առաւել քան զկէսն ցրուեցան և մեռան, գրեաթէ և ամենայն անասունք նոցին 30,000 ոչխար և այծ, և 3000 արջառ: — Համբաւեալ են ամենայն գիւղորայքս բարեբեր այգեօք և պարտիզօք, որպէս և հովիտք



43. Պատկերքանդակ յԻպրիզ. (Տես յէջ 176):

և բլուրք գունագոյն ծաղկօք և պէսպէս ծառովք, յորս յիշին և մեծամեծ արքակաղնիք, և քաղցրաձայն հաւք նոցին՝ սոխակք:

68. Հզօրագոյն 'ի ծործորս և լեռնային վտակս՝ որք 'ի գետն Թափին 'ի հիւսիսային կողից Տօրոսի, է արեւելագոյնն, որ ընդ մէջ Զագալ-քէօյ և Էսկի-Աւան գեօղից ընթացեալ՝ անկանի 'ի գետն Խօճա: Յահեկէ այսր վտակի 'ի հարաւոյ Գարա Եուսուֆ գեղջ, 'ի բարձունս լերանց երեւին աւերակք բերդի՝ Մինդոս գալէսի կոչեցելոյ, զորմէ ոչ գտանեմ նոր ինչ ծանօթութիւն. սակայն են մեզ հին գիտելիք կարեւորք՝ աւանդեալք յարքունի պատմչէ մերմէ, Թերեւս և յականատեսէ պատմելոյն. յորմէ իմանամք, զի ընդ իշխանութեամբ սուլտանաց Իկոնիոնի էին կողմանքս՝ յաւուրս Հեթմոյ Ա. բայց մի ոմն յիշխանաց նորին՝ Օշին անուն, դաւանութեամբ Յոյն, գողացեալ էր զբերդն զայն, զոր պատմիչս Մունդաս դղեակ անուանէ. ընդ որ սրտմտեալ սուլտանին (կամ սուլտանորդին Ռուգնատին)՝ առաքեաց, յամի 1259, զօր բազում՝ պաշարել զամրոցն, յոր անկեալ ապստամբեալ կային բազմութիւն քրիստոնէից սահմանացն. յաջողեցաւ քաջի ումեմն 'ի նոցանէ ելանել 'ի բերդէն՝ և ընդ գաղտ ճանապարհ հատանել անցանել զլերինսն, գալ 'ի Կիլիկիա և գոյժ արկանել արքային Հեթմոյ. «Եւ թագաւորն հրամայեաց զօրաց իւրոց ժողովել. և առեալ » զնոսա գնայր վաղվաղակի, և եհաս մինչև 'ի սահմանս » բերդին: Եւ էր ընդ թագաւորին կենսունակ սուրբ » Նշանն որ անուանի Կաւսիտացի (էջ 157). յորմէ եղև » մեծ սքանչելիք. զի 'ի գիշերին մինչ գնային գաղտա-

» գողի, երևէր ամենեցուն՝ զի ղամբար վառեալ երթայր
» առաջի Թագաւորին։ Եւ իբրև մօտ եղեն 'ի բերդն և
» գնային 'ի վերայ ձիւնի, և էր յուլիս ամիսն, (ուրեմն
» բարձրաբերձ յոյժ էին լերինքն)․ և տապատալարն Լևոն
» մականուն Այլհաւնանց՝ յառաջագոյն գնայր․ և եգիտ
» 'ի վերայ ճանապարհին գունդ մի 'ի զօրաց (Թշնամեա֊
» ցըն), զոր կացուցեալ էին պահապան զօրաց իւրեանց․
» և յայնժամ յարձակեցան յիրեարս․ և պարտեալ (այլ֊
» ազգեացն) 'ի փախուստ դարձան, և գնացին մինչև յԱ֊
» ռակլի։ Իբրև լուաւ բանակ (այլազգեացն) զաղաղակ հա֊
» ւատացելոցն՝ զինեցան և ելին ընդ առաջ, և պատե֊
» րազմէին ճակատ առ ճակատ․ և սկսան հարստահարել
» զքրիստոնեայսն․ և զանուանեալ զօրականն զՎահրամ
» Համուսցին 'ի մէջ առեալ և նիզակ եդեալ 'ի չորեցունց
» կողմանց՝ յիրեարս մղէին, և ոչ կարէին ընկենուլ զնա։
» Եւ զայն տեսեալ արիագոյն զինուորն՝ սպարապետն
» Հայոց Սմբատ՝ հարաղատն արքային, և առեալ նիզակ՝
» գնայր 'ի վերայ, և գիթաւալ 'ի նոցանէ յերկիր ընկե֊
» նոյր, և ազատէր 'ի նոցանէ զփեսայն իւր զՎահրամ․ և
» քաջապէս մղէր զնոսա յիջավանս իւրեանց։ Եւ յայն֊
» ժամ եհաս զօրութիւն սրբոյ Նշանին․ և ամենքեան
» քաջապէս ջանային 'ի մարտն․ և 'ի փախուստ դարձու֊
» ցեալ զնոսա՝ զբազումս կոտորեցին (յայլազգեացն)․ և
» մնացեալքն փախստեայ գնացին յԻկոնիոն առ սուլ֊
» տանն իւրեանց՝ լի ամօթով։ Իսկ Թագաւորն բազում
» ուրախ և կարասեաւ նոցա դարձաւ խաղաղութեամբ
» 'ի Կիլիկիա․ և զայնքան բազմութիւն հաւաքելոցն՝ 'ի
» նոյն ղղեկէն հանեալ՝ եբեր յաշխարհն իւր»։ — Շատ
իցէ թերևս տեղւոյս այս յիշատակ՝ թէ և չգուցէ այլ։

Զանց արարեալ զքննութեամբ համօրէն դաշտին Ա֊
ռակլեայ՝ ըստ հիւսիսոյ և ըստ արևմտից, յիշեցից միայն
մերձ 'ի հիւսիսային արևելեան ծայր Աղ-կեօլ լճի՝ զգեօղն
Հար-խան, վասն նմանաձայնութեանն ընդ Հարգանայ
եպիսկոպոսական թեմի Հայոց 'ի ԺԳ դարու, զոր յի֊
շեցաք վերագոյնդ՝ Հաճին թուեցեալ յոմանց․ այլ ար֊
ժանի քննութեան է և այս՝ առ 'ի պարզել զխնդիրն․
այն զի յիշի առ մեզ եպիսկոպոս Իկոնիոնի, այլ ոչ Հե֊
րակլիայ, որոյ մարթ էր ունել, և թերևս ոչ յանուն քա֊
ղաքին՝ այլ աթոռոյն կոչէր, եթէ էր արդարև տեղիս
այս արժանի աթոռընկալ լինելոյ։

Աստուստ զհետ կրթելով յառաջ յիշեալ արշաւանացն
Հեթմոյ, և զանց առնելով զբազում օթեվանօք, արժան
համարիմ քննել և ընչանաւոր վայր մի՝ ոչ սակաւ հեռի
'ի հարաւոյ արևմտից Սպիտակ լճին (Աք կէօլ), և գրեա֊
թէ նոյնքան հեռի 'ի հիւսիսոյ Գարամանայ, և մերձա֊
գոյն 'ի հիւսիսոյ Գարատաղ լերին բարձու 8000′, մեկնակ
ամբարձելոյ․ ուրանօր ճանապարհ՝ ոչ հասարակացն՝ անէ
յափանց լճին, — անցանելով ընդ ճախճախուտս, ընդ ա֊
րօտս կամ հովիտս որ յանուն նոյն լճի, ընդ աւերակ քա֊
ղաք մի, ընդ գեօղն Աք-չէշա?, ընդ Զօրլա, ընդ ստոր֊
ոտս Սեաւ (Գարա) լերին, և ընդ անձուկ խորաձոր մի՝
յորում աճեն վայրի նշենիք և գեղձիք, երեք կամ չորս
մղոն երկայն, — և հանէ հուպ 'ի նպատակեալն մեր տե֊
ղի, կոչեցեալ Մատէն չէհիր (Բոլուց քաղաք), այլ հա֊
սարակօրէն Պին պիր գիլիսէ, (Հազար և մի եկեղեցիք),
60 կամ 70 տամբք․ և ահա այս ինձ թուի լինել Փողն
Եկեղեցեաց յիշեալն յարքունի Պատմչէն․ որոյ բան ցու֊
ցանէ՝ Հեթմոյ բազմարիւր բանակաւն յերիս տեղիս կամ
վիճակս արշաւեալ․ մի 'ի սահմանս Առակլեայ, երկրորդ
'ի Փողս այս, և երրորդ 'ի Մուռանդինն, յոր անուն
էր և ամրոց՝ ընդ ձեռամբ Սմբատայ Գունդստապլի՝ նաև
յամի 1265։ — Արդ են 'ի տեղւոջս յայսմիկ աւերակք ե֊
րեսնիւ չափ (ըստ ոմանց՝ 48) մեծ և փոքր բիւզան֊
դական եկեղեցեաց՝ պէսպէս ձևօք, 'ի կարմիր և գորշա֊
գոյն որձաքարից, գերեզմանք, շիրիմք և գետնափոր
գուբք, և քաղաքատեղի 'ի հիւսիսակողմն ձորոյն ընդ
արևելս խոնարհեալ․ և 'ի սպառուածին՝ երեք փոքր եկե֊
ղեցիք յարակիցք՝ խանգարեալք․ յարևմտից նոցին եր֊
կու գերեզմանատեղիք հին և նոր, մեծամեծ դամբանօք,
որոց ոմանց քարինք թաւալեալք են․ սակաւուք 'ի բա֊
ցեայ կայ քառակողմն տեղի որմնափակ, մէն մի աշտա֊
րակաւ յանկիւնսն, որոց հարաւային արևմտեանն յար֊
դարեալ է յեկեղեցի․ են և աստանօր շիրիմք, գուբք և
ջրհորք ոմանք սանդղօք իջանելիք․ սակաւուք ևս հեռի
աստի ընդ հիւսիս՝ կայ այլ եկեղեցի մեծ՝ գեղեցիկ ճակա֊
տաւ և պատուհանօք․ ութանկիւնի մատուռն առ նմին,
և շիրիմք հոյակապք այլ անգիրք։ Մղոնաւ 'ի բացեայ 'ի
շինուածոց աստի՝ կան աւերակք այլոյ մեծագոյն եկեղե֊
ցւոյ, որոյ ձեղուն անկեալ է, այլ կամարքն կանգուն
էին (յամի 1837), ունելով և սորա ութանկիւնի մատու֊
ռըն առ երի 'ի հիւսիսոյ կուսէ, յորում և հակիրճ ար֊
ձանագիրս, որ և միակ գտաւ 'ի բովանդակ աւերեալ
քաղաքիս, ΕΥΧΗΝ ΗCΙΟΥ ΤΙΒΕΡΙΟΥ, Նուէր Եսիոյ Տի֊
բերի։ Հէմիլդըն անգղիացի որ յետ այլոց ոմանց մանր
քննեաց զայսոսիկ (8 օգոս․ 1837), ցուցանէ զաւերակ
քաղաքատեղիս այս լինել Լիւստրա՝ յիշեալն 'ի Գործս
Առաքելոց, (ԺԴ․ 6․ 20)․ հաւանի այսմ և Տէքսիէ՝ որ յետ
իրր 40 ամաց (1875) յայց ել աւերակացս, որպիսիս ե֊
տես և 'ի մերձակայ բլուրսն, յորս են և մեծամեծ ջրամ֊
բարք։ — Երրորդ տեղին ասպատակեալն 'ի Հեթմոյ՝
Մուռանդինն որոյ վայել է ոչ լինել հեռագոյն յերկոցուն
նախագրելոցս, թուի ինձ խնդրելի 'ի մերձաւորն դրիւք
և անուամբ 'ի Պուռնատս, զոր վերագոյնդ նշանակե֊
ցաք՝ 'ի ստորոտս Գափագլը լերին (յէջ 174)։

# ԼԵՌՆԱՀՈՎԻՏՔ ՋԱՀԱՆ ԳԵՏՈՅ

## ԿԱՊԱՆ ԳԱՒԱՌ

69. Հզօրագոյն գետոց Կիլիկիոյ՝ Ջահան ըստ մերայոցս, և Պիւռամիս ըստ նախնի հեղինակաց, Ճիհուն կամ Ճիյհուն ըստ Արաբաց և Թուրքաց, զարևելեան մասն ունի աշխարհին, թերևս և զընդարձակագոյն հովիտ. թէ և ոչ երկայնաձիգ քան զՍարոս, այլ զի բազմապատուած է քան զնա՝ մարթի և երկարագոյն լինել. իսկ լայնութեամբ յայտնապէս առաւելու, որով՝ և նաւարկելի իսկ է 'ի ստորին մասին՝ ցանորոշ սահման: Գետակունքն որ են ընդ մէջ Անտիտաւրոսի յարևմտից, և սահմանաց նահանգացն Սեբաստիոյ՝ 'ի հիւսիսոյ, և Մելիտինոյ՝ յարևելից, ընդ անծանօթագոյն մասունս փոքուն Ասիոյ համարին. այլ զի արտաքոյ են Կիլիկիոյ՝ թողցին այլուր քննութեան. չատ լիցի մեզ գիտել արդ, զի որչափ ինչ ստուգեալ է՝ յերից առաջից գետանայ Ջահան. որոց միջին և հիւսիսագոյնն՝ յԱնտիտաւրոսէ կամ 'ի Պինպուղա լերանց իջանէ, և կոչի Խուրման-սու. երկրորդն՝ որ և բուն վտակ գետոյն համարի՝ յարևելից Ալպիստանայ գայ՝ Սօկիւտլիւ (Ուռենուտ) անուամբ, և սակաւուք ստորև քաղաքին 'ի Հր. Մ. ընդունի զառաջինն. սակաւիկ մի ևս ստորև՝ զերրորդն, որ է Կէօք-սու, այսինքն Կոկիսոնի գետակն, հանդերձ Իրճիւն-սու? օժանդակաւ: Միացեալ երեքումբք՝ սակաւ ինչ յաջ և յահեակ խոտորելով՝ իջանէ գետն ընդ հարաւ՝ մինչև 'ի սահմանս Մարաշոյ, ուր ընկալեալ յահեկէ՝ յարևելից՝ զԱգ-սու գետակ՝ ապա դառնայ ընդ Մ. Հր. 'ի դաշտայինն Կիլիկիա, ընդունելով յաջմէն զգետակն Սսոյ և զայլ մանունս. և 'ի վերջ կոյս ընթացիցն դարձեալ յարևելս՝ թափի 'ի ծովածոցն Այասոյ, սակաւուք 'ի հարաւոյ այսր քաղաքի. սակայն 'ի հնումն յառաջելով ըստ նախկի ուղղութեանն ընդ արևմուտս, մերձ 'ի բերան Սարոսի մտանէր 'ի ծով. նա մանաւանդ երբեմն ընդ նմին իսկ խառնեալ միանայր, որպէս յիշեցաք 'ի բնագրութեանս:

Արդ թէպէտ ոչ միայն որ յառաջ քան զմիութիւն երեցուն առաջիցն գետահովիտն՝ արտաքոյ է Կիլիկիոյ, այլ և բովանդակ միջոցն որ այսր քան զՄարաշ, սակայն զի և անդ վիճակք ինչ լեռնայինք՝ ընդ մէջ Սարոսի և Ջահանայ՝ գրաւեալ էին ընդ ձեռամբ մերոց թագաւորաց, զայնոսիկ միայն խնդրեսցուք՝ ըստ դոյզն ինչ ծանօթութեանս. քանզի հանգոյն աղբերավայրիցն անայցելու միան և վայրքս՝ որ 'ի հիւսիսոյ Սսոյ, յելից Հաճնոյ, 'ի հարաւոյ Կոկիսոնի, յարևմտից կամ յաջմէ գետոյն և Ալպիստանի և Մարաշոյ: Եւ են վիճակքն 'ի հարաւոյ ընդ հիւսիս գնալով՝ Ֆոռնոս, Կապան, և Ունի կամ Զեթուն. յետինս և ոչ միով անուամբ ծանօթ է մեզ 'ի ժամանակս մերոց սիսուանեան պսակազատաց, հաւանօրէն 'ի սահմանի իշխեցողացն Մարաշոյ ամփոփեալ գոլով. բայց զի մերձաւոր նմին տեղիք՝ Ֆոռնոս և Արեգին՝ յիշին առ մերայինս, չէ անդէպ նոյնպէս լինել և համօրէն վիճակին. նա զի ըստ այժմեան ազգային տեսութեան՝ օտար յոյժ թուի անջատել զայն 'ի Կիլիկիոյ: Բայց ըստ վերագոյնս ակնարկութեան՝ ընդ սակաւածանօթ կողմանս Կիլիկիոյ դասելի են վիճակքդ, ոչ ուրուք գիտնականի յայց ելանելով տեղագրեալ զնոսին, թէ և արդ յետ նուաճման Քօզանեանց լեռնականաց՝ դիւրեալ իցեն մուտք 'ի նոյնս, այլ տակաւին չեհաս մեզ ստոյգ տեղեկութիւն: Գուշակի յասացելոցս, զի թէ և եղեալ իսկ էր այս մասն վերին հովտաց Ջահանայ՝ ընդ մերոցս իշխանութեամբ, ոչ գիտեմ յի՞նչ անուն կոչէր, կամ որո՞յ գաւառի սեփական. յանկագոյն ինձ թուի Կապան գաւառի, զուգէ և մասամբ Կոկաց կամ Կոկիսոնի, Ալպիստանայ և Մարաշու, որք աներկբայաբար արտաքոյ են Կիլիկիոյ: Արդ ոչ կարելով ճշգրտել զայսոսիկ՝ կարգեմք ընդ միով անուամբ Կապանայ, որ և առանձին եպիսկոպոսական թեմ էր. իսկ զարդիս յՕսմանեան վիճակագրութեան որիշ որիշ յիշին Ֆոռնոս կամ Ֆըռնուս և Զեթուն վիճակք, և այլք ևս մերձաւորք՝ ինձ բնաւին անծանօթք [1]. իսկ 'ի պատրիարքական վիճակագրութեան յանուն Զեթունի խառն գրին գեօղք և տեղիք պատշաճեալք Ալպիստանայ և այլոց, թերևս ըստ հոգևորական վարչութեան միախմբեալք. և այս պատճէն է նոցին [2].

[1] Մարաշ գաւառի յատկացեալ են վիճակքդ, յորում և Ալպիստան և Եարբուզ, և են՝ զատ յայլոց, Պարտըզ, Հաճիլէր, Եէնիճէ գալէ, Պազարճըգ, Բէշլի, Ճամուսդէլ, Կիւկերճինլիգ, Պէրկիան, Բալաս, Սէօյիւտլիւ, Կէօյիւկ գաշլը, Մինարէլի, Նատըրլը, Պուլանըգ, Զաղլաղան ճէրիտի, Գուչճու ճէրիտի, և աշիրէթքն Զագալլը, Աթմալը, Գըրճլը, Սինամէնլի, Զէլիկեանլը և Ավշար:

[2] Որպէս թուի վիճակագրութիւնս այս արարեալ է 'ի միջոցի 1878-80 ամաց:

| ՇԻՆԱՎԱՅՐՔ | ԲՆԱԿԻՉՔ Հայք | ԲՆԱԿԻՉՔ Իսլամք | ԺԱՄՔ հեռաւորութեան 'ի Զէյթունէ |
|---|---|---|---|
| Զէրուն-Ուլնիա | 17,600 | 240 | |
| Պէշէն | 40 | 480 | 3 |
| Քէթմէն | | 164 | 4 |
| Սարը կիւզէլ, կամ Քիւրէճիկ | 60 | 560 | 5 |
| Գապազ Թէփէ | | 480 | 8 |
| Գանտիլ | | 160 | 10 |
| Չիֆտլիք | | 280 | 9 |
| Քիւրթիւլ կամ Քիւթէլի | | 400 | 8 |
| Ախշար | 40 | 990 | 10 |
| Գարամանլը | | 400 | 9 |
| Պայթէմուր | 24 | 800 | 11 |
| Գարաթութ | 16 | 790 | 11 |
| Էրիճէք կամ Էօճնտէրէ | | 400 | 7 |
| Թոմպաք | | 360 | 11 |
| Մալաթիա | | 280 | 9 |
| Սօյսալի | | 320 | 10 |
| Թանուր | | 240 | 5 |
| Հաճի տէրէ | 320 | 160 | 4 |
| Տէօնկէլ | | 160 | 6 |
| Զուգուր հիսար (Կանչի) | | 400 | 12 |
| Ֆըռնուս | 2,400 | | 6 |
| Մըխալ կամ Աւագալ | 2,800 | | 3 |
| Ալապաշ-Արեգին | 3,200 | 40 | 5 |
| Ֆէնկ կամ Խէպի | 144 | | 3 |
| Ալապօղան-Անդրէասանք | 56 | | 4 |
| Տէօնիքլէր կամ Տօնիկենք | | 240 | 3 |
| Մուրթատլար կամ Ղալըճենք | 280 | | 2 1/2 |
| Եգիտլէր-Աւագենք | 160 | | 2 |
| Էկլէնճէնք կամ Թէքեէ մահալլէսի | 320 | | 1/2 |
| | 27,460 | 8,344 | |

70. Ա. ԶԵԹՈՒՆ=ՈՒԼՆԻ. — Յերեցուն վիճակացն յիշեցելոց ըստ այժմեան արքունի վիճակագրութեան՝ արեւելագոյն և հիւսիսային է Զէյթուն, արեւմտային՝ Ֆըռնուս, հարաւային՝ Կապան։ Երեցուն ևս երկիր լեռնավայր է բազմակոհակ, անձուկ և դժուարակոխ ձորակօք, յոր սակս դիւրին էր զանխուլ մնալ վայրուցն, և ազատօրէն կեալ բնակչացն, ապաւինելով 'ի բնակառույց ամուրսն։ Լերինք յանուանէ նշանակեալք 'ի քարտս ինչ՝ անջրպետք սահմանաց Հաճնոյ և Կոկաց՝ են, Քօշ տաղ 'ի Հս. Մ. Զէյթունի. Գաւուրդաղ 'ի նմին կողման, առ որոյ ստորոտով և 'ի սահմանս Պնտուխ գեղջ լճակ մի է տզրըկաքեր, վասն որոյ և կոչի Սիւլիւկլիւ-կէօլ։ Ի հարաւոյ արեւմտից սորա երկաքին Զավտար լերինք, Մեծ և փոքր, սա 'ի հարաւոյ կայ առաջնոյն, յարակից ունելով զԹօզլու լեառն. 'ի միջի սոցին և լճին են Խնըրխօզ անուանեալ արօտավայրք և հովիտք։ Ցարեւմտից հարաւոյ սոցին է Գըզըլ տաղ, որ իցէ թերեւս յիշեցեալն կանխաւ (յէջ 164) Կարմիր լեառն, յորոյ յելից հարաւոյ է Սաղտալը լեառն, յորմէ իջանէ Սեւ աղբիւր վտակ 'ի կողմն Զէյթունի. մերձ նմին 'ի Հր. Մ. Զուխուրքըլուզ որ և Ծովք լեառն։ Ցարեւմտից հարաւոյ սոցին և 'ի հիւսիսոյ արեւմտից Կապանայ բացագոյն՝ մեծ լեառն Աստուածաշէն։ Այս ամենայն յարեւմտից կողմանէ հիւսիսախառն Զէյթունի. իսկ յարեւելից սորին անջրպետ Ալպիստանայ և Մարաշոյ՝ են լերինքն Ախիշէր, Ընկուզեկ կամ Անկոճեկ լեառն (Նի-եիւզուկ գրեալ 'ի քարտի ուրեք). և 'ի հարաւոյ նորին՝ Կաւկիրտ (Kawkirt). յարեւմտից հիւսիսոյ սոցին և մերձագոյն 'ի Զէյթուն՝ այլ 'ի սահմանի Մարաշոյ՝ Խոփուկ։ Ի հիւսիսակողմն Զէյթունի գլխաւոր և ոչ մերձաւոր լեառն՝ է բարձրն Պրիտ կամ Պերիդ, և սակաւուք վերագոյն 'ի հիւսիսոյ՝ Սաղտալը և Եէտի-գարտաշ լերինք։ — ԶՊերիտ՝ 'ի յիշատակարանի Աստուածաշունչ գրոց՝ զոր Կարապետ կաթողիկոս Ուլնեցի եթող 'ի վանս Գաղատիոյ՝ սեփական վիճակին իւրոյ, ստուգաբանէ ցուրտ նշանակել, վասն մշտաձիւն լինելոյ նորին, (զի համարի իբր 10,000' բարձր), և հանապազ զովութեան վտակին իջելոյ անտի ընդ հարաւ 'ի Զէյթուն, խառնելով նախ ընդ Աղաճարի ջրոյ 'ի Գավուրմա անուանեալ տեղւոջ, և ընդ ծործոր անձուկ անցանելով։ Նշանաւոր է լեառնս այս բնական կազմութեամբն և բերովք, հարուստ Երկաթահանս ունելով, մթերս պարէնի և պաշտպանութեան Զէյթունեայց։ Ճոխագոյն ևս է լեռնային բուսովք, ըստ այլեայլ աստիճանաց բարձրութեանն բերելով այլեայլ ազգս և տեսակս, որպէս քննեաց և նշանակեաց գերմանացի գիտնականն Հաուքնեխդ[1] (Haussknecht) յամի 1865, աւելի քան զերկերիւր տեսակս և զանազանակս բուսոց, յորոց ոմանք նախ առաջին 'ի սմին իսկ 'ի լերին յայտնեցան, վասն այնորիկ և կոչեցան յանուն նորին (Պրիտեան), կամ գտողին (Հաուքնեխդեան), կամ գաւառին (Կատառնեան՝ ըստ կարծեաց բուսաբանին). զորս՝ վասն շատութեանն և յոլովից ևս անծանօթութեանն՝ ծանր համարելով մուծանել յայս կարգ բանիցս, այլ և ոչ զանց առնել կամելով, 'ի շնորհս այսպիսւոյ նշանաւոր լերին և վիճակի, շարեցից 'ի ստորև 'ի ծանօթութեան, քաղեալ յԱրեւելեան Փլորայ Պուասիէ բուսաբանի, առ որ առաքեալ էր Գերմանացւոյն զբոյսն քաղեալս. իսկ ինձ խոստացեալ գրով՝ և ոչ հասուցեալ 'ի դէպ ժամու զատորագրութիւն կողմանցս[1]։

[1] Հաճոյ համարիմ գիտել և զայս բուսաբանս, եթէ կարգ ցանկեալ բուսոցս՝ է ըստ դասաւորութեան Պուասիէ Էդմոնդի (Edmond Boissier), 'ի գիրսն Փլորա Օրիէնթալիս (Flora Orientalis), որոյ տպագրութիւն սկսեալ յամի 1866, 'ի Պազիլէա Հելուետիոյ, չև ևս՝ այլ մերձ է յաւարտել. չորք ստուար հատորք և մասն մի հինգերորդին հրատարակեալ են. Հաւանական ուրեմն է զի և 'ի մնացելումն մասին՝ նշանակեալ գտցին այլ ևս տեսակք ինչ բուսոց Պրիտ լերինս, որոյ և բարձրութիւն գուշակի ոչ լինել նուազ քան զ'10,000 ոտնաչափ բարիզեան, որով չափով համարեալ են բարձրութիւնք տեղեաց բուսոցն՝ որ երեւին 'ի ցանկիս։ Հանգոյն բուսացուցակին այնմ Քոչեայ որ 'ի բնագրութեանս, և այժմու ցանկիս անուանք (յորոց շատք առաջինն անգամ լսին 'ի գիրս բուսաբանին հելուետիացւոյ) թարգմանեցան ըստ կարի մերում. աստղանիշ որոշեալ զմեր նոր յարմարեալ անուանս՝ 'ի հնոց և 'ի ծանօթից, հարցականաւ (?) զտարակուսեալ իմացուածս, և ոչինչ նշանակեալ՝ ուր առաւել երկբայեցաք կամ ոչ իմացաք. իսկ զոր սխալ իմացեալ և թարգմանեալս է՝ ուղղել ժամ

Եթէ յետ այնքաննեաց ուսումնական այլ օտարալուր և յոլով մասամբ անծանօթ անուանց, հաճոյ իցէ մերայոց և յիւրեանց ինչ ազգային գրոց լսել անուն մի, թէ և այլախորթ և այն, ահա ծանուցանէ Բժշկարան մի՛ի ճառելն զՀնդուպա բուսոյ, որ է Եղրդակն կամ Ճարճատուկ (Endivia), եթէ, «Հնդուպան՝ չորս ազգ է. մէկն «Զթլըխն է. մէկին՝ Զէթունցիք Ղազուալպուշայ կ'ասեն. » մէկն՝ Քամնին է, մէկն Մառուլն է»: Ըղձալի էր թէ հմտից և հասուաց, և ընուլ զթերի գոյն ծանօթութեանցն՝ որ 'ի վերջոյ ցանկին, և որ յայլ ևս ամին նման բուսացուցակս:

Ranunculus demissus major, Խառաձաղիկ նկուն.
Papaver Caucasicum, Մեկոն կովկասեան.
Arabis sagittata, *Արաբիկ փքնեւոր.
Cardamine uliginosa, Ճարճիր վայրի կամ ճախնային.
Barbarea minor, *Վառվառեակ [1] փոքրիկ, 8000′.
Erysimum thyrsoideum, Երնջնաստակ աշտէաձև.
— gelidum Armeniacum, Եր. Հայկական սառնորակ.
— alpestre, Եր. վայրի.
Hesperis thyrsoidea, *Երեկորնիկ աշտէաձև.
— campicarpa, Եր. կորապտուղ, 8000′.
Cochlearia sempervivum, *Դրգալխոտ մշտադալար. 7000′.
Anchonum helychrysifolium, *Հեղձի արևոսկեայ-տերև, 9-10,000′. զայս տեսակս Դուռնըֆոր կոչէր Երեկորնիկ հայկական, Hesperis Armena helichrysifolio flore luteo.
Alyssum condensata, Վառվռուկ խտացեալ.
— peltarioides. Վառ. ասպարաձև.
— eriophyllum, Վառ. ասրաքստակ.
— Haussknechtij, Վ. Հաւսքնեխդեայ.
Thlaspi Haussknechtij, *Տափկի Հաւսքնեխդեայ, 9-10,000′.
Aethionema coridifolium, *Տարաթելիկ մշկիատերև?
— schistosum, Տ. խաւեղ.
— lignosum, Տ. փայտային.
— speciosum, Տ. գեղանի.
Isatis frigida, *Կոկուկ սառնային.
— Aucheri, Կ. Աւգերեան [2].
— corymbosa, Կ. փնջաւոր.
Fumana aciphylla, *Ֆումանա սրատերև.
Draba Natolica, Կոտեմ անատոլեան.
Ptilotrichum cyclocarpum, *Թեւահերձիկ? շրջապտուղ, 9000′.
Heldreichia buplevrifolia, Հելտրայխիա [3] եզնակողի տերևով, 9000′.
Polygala Anatolica, *Կաթնխոտ անատոլեան, 6000′.
Dianthus Haussknechtij, Ճահոգրամ Հաւսքնեխդեայ, 6000′.
— Muschianus major, Ճ. Մշոյ մեծ, 8000′.
Gypsophila libanotica, *Գաճի լիբանանեան, 8000′.
Silene capitellata, Ճլէլեկ մանրագլխի.
— pruinosa, Ճլ. եղեմնուտ.
— arguta, Ճլ. ծայրասուր.
— odontopetala, Ճլ. ատամնաթերթ.
— commutata, Ճլ. յեղափոխեալ.
— dianthifolia, Ճլ. շահոգրամատերև, 6-9000′.
Alsine dianthifolia, Բզըուկ շահոգրամատերև.
— juniperiana, Բզ. գիհիաձև.
— erythrosepala, Բզ. կարմրափերթ, 8-9000′.
Arenaria rotundifolia, *Աւազուկ բոլորատերև.
— drypidea, Աւ. մաորենի կամ փշուտ.
— Tmolea, Աւ. Տմոլեան (լերին).
— acerosa, Աւ. խառնահատ?, 7-10000′.
Paronychia capitota, *Քցըմի [4] կատարաւոր.
Erodium micropetalum, *Ճայակտուց փոքրաթերթ, 8000′.
Acer Hyrcanicum tauricolum, Տխկի տաւրացի վրկանեան [5]. 6-7000′.
Tunica stricta, *Պատմուճանիկ նեղ, 6000′.
Lepyrodiclis holosteoides, *Փրփրազոյգ? սիգական, 8000′.
Genista albida Montbreti, *Աւելաթուփ սպիտակուկ Մոնպրետի [6], 6000′.
Trigonella glomerata, Հացհամեմ խմբաւոր.
Trifolium pratense majus, Առուոյտ մարգաց մեծ.
— arvense, Առ. դաշտաց.
Anthyllis vulneraria stenophylla, Քարոտն նրբատաղարթ, 8000′.
Coronella Cappadocica, *Պսակուկ կապպադովկեան, 7000′.
Astragallus Haussknechtij, Խազիրան Հաւսքնեխդեայ, 9-10000′.
— Berytius, Խազ. Պերիտեան.
— melanocarpus, Խ. սևապտուղ, 8-10000′.
— nanus, Խ. գաճաճ, 8000′.
— fraxinifolius, Խ. հացիատերև, 7000′.
Astragallus pennatus, Խ. փետրունակ, 8000′.
— cymbostegis, Խ. կմբեայ.
— hilaris, Խ. զուարթ, (մերձ 'ի Զեթուն).
— oleifolius, Խ. ձիթենատերև.
Hedysarum erythroleucum, Կորնգան կարմրասպիտակ, 9-10000′.
Onobrychis sativa montana, Իշառուոյտ վայրի.
— cornuta, Իշ. եղջերաւոր.
— alpestris hypoleuca, Իշ. լեռնային ստորասպիտակ.
Pyrus eleagrifolia, Տանձի փշատի-տերև.
Cotoneaster vulgaris integrifolia, *Սերկեւլիճ լիատերև.
Rosa glutinosa, Վարդ մատղող.
— tomentosa, Վ. թաւարծի, 8000′.
Spirea ulmaria, *Պարուրի կնձնեայ.
Rubus cæsius, Մորենի կապուտակ.
— tomentosus, Մ. թաւարծի, 7000′.
Geum urbanum, Մարեմծաղիկ.
Potentilla Kotschyi, *Հզօրի Քոչեայ.
Agrimonia repens, Բաշխ վաղվաղուկ.
Alchemilla vulgaris major, Զիթարլիխ հասարակ.
Epilobium origanifolium, *Վերնամաշկի զուխրակատերև, 7000′.
Umbilicus Pestalozzæ, *Պորտնուկ Պեստալոցցեան [7], 8000′.
— Libanoticus, Պ. լիբանանեան.
— aizoon, Պ. ճորտի, 7-9000′.
Sedum album, Գառնադմակիկ սպիտակ, 8000′.
— tenellum, Գ. մատաղ, 8000′.
— Laconicum, Գ. լակոնացի.
Saxifraga Kotschyi, *Քարկոտրուկ Քոչեայ, 8000′.
Eryngium Billardieri, Երնճատակ պիլլարտիերեան [8], 6-8000′.
Bupleurum baldense ænum, *Եզնակողիկ պալտեան [9].
Pimpinella tragium, Սեզ . . . . . .
Carum Burgæi Cataonicum, Ճապուռ Կատաոնեաց Պուրժոյ [10].
Grammosciadium Haussknechtij, *Հովանոցանիշ Հաւսքնեխդեայ, 6000′.
Anthriscus macrocarpa, Ուրց երկայնապտուղ.
Hippomarathrum crispum, *Ձիասամիթ գանգուր, 6000′.
Prangos Uechtritzii, *Պրանգոս Վեխտրիցեայ [11], 7000′.
Cnidium conifolium, *Եղինճուկ կոնատերև, 7000′.
Ferulago pauciradicata, *Զաղկի սակաւարմատ.
Johrenia Berytea, *Մանիշկուտ Պերիտեան, 7-9000′.
Peucedonum depauperatum, Երիցու աղցան.
Heracleum humile, Հերակլեան (գազար) ցածուն.
— pastinaca, Հեր. գազար, 9000′.
Pastinaca glandulosa, Գազար խոյլաւոր, 7000′.
Viburnum opulus, Գերմասատի խեչակ.
Lonicera orientalis, Քօշագեղձ արևելեան, 7000′.
Crucianella exasperata, *Խաչենիկ խեղաթիւր, 7000′.
Asperula glomerata capitata, *Մարգամարօտ? հոծեալ, 7000′.
— stricta latibractea, Մ. սեղմ, 8000′.
— involucrata, Մ. պատատուկ.
Galium orientale elatius, Կորանծի-խոտ արևելեան բարձր.
— cornigerum, Կո. եղջերաւոր, 8000′.
— coronatum, Կո. պսակաւոր, 8000′.
Valeriana alliariæfolia, Մրուանոտակ խառոպատերև.
Cephalaria stellipilis, *Գնտագլուխ աստեղազարդ.
Inula germanica, Լուսադեղ գերմանացի.
— Montbretiana, Լ. մոնպրետեան [6].
— acaulis, Լ. անցօղուն, 8-9000′.
Helichrysum Pallasij chioniphilum, *Արևոսկի ասրաքստակ, 9-10000′.
Achillea odorata, Հազարատերեան հոտաւէտ.
— compacta, Հ. հոծ.
— Armenorum, Հ. Հայոց, 9-10000′.
Chamæmelum monticolum, Խնձորխոտ (երիցուկ) լեռնցի, 8000′.
Pyrethrum fruticulosum, Թաղանդաստ պտղաբեր, 8000′.
— Kotschyi, Թ. Քոչեայ, 9000′.
— Balsamita, Թ. բալսամնիկ, 6-7000′.
— Cilicicum, Թ. կիլիկեցի, 5-6000′.
— densum, Թ. խիտ.
— argenteum, Թ. արծաթորակ, 8-9000′.

գրեալ կամ ընթերցեալ առ Մատթ. Ուռհայեցւոյ, (յորում զամս վաթսունևհինգ խոստաձարակ ճգնութեամբ եկեաց՝ հանգուցեալն 'ի Կաստաղօն՝ Մարկոս՝ Հայ կամ Ասորի, որ « աղօթիւք իւրովք յերկուս տեղիս ջուր եհան » յայնմ սահմանին ». և մարգարէացաւ ևս, ասեն, յետ առման Երուսաղեմի 'ի Խաչակրաց, եթէ դարձեալ մատնեսցի 'ի ձեռս այլազգենից): Եւ զի պատմիչն Ուռհայեցի՝ 'ի Կոկաց գաւառի և մերձ 'ի Մարաշ ասէ զտեղին, աներկբայ է ընդ մէջ երկոցուն լինել, ուր է և Զէթուն, և յայսմանէ հաւանելի լինի և սորա լինել 'ի Կոկաց գաւառի: Ի Նորագիծ քարտիսի միում Նշանակի առանց անուան լեառն մի բարձրաբերձ յՆ. Հր. Կոկիսոնի՝ երկուք կամ երիւք փարսախօք հեռի, և 'ի հիւսիսոյ Կանչոյ. թերևս սա իցէ Կոնկռնատոց, ուղիղ յարևմտից՝ այլ ոչ սակաւ հեռի 'ի Զէթունէ: Վասն մերձաձայնութեան ինչ անուանն և վասն անյայտութեան տեղւոյն՝ յիշեալ լիցի աստանօր և Լոնգինակ (Longinach) քաղաք կամ բերդաւան, յորում տիրէր երբեմն Բեռնարդ փաւնկ Օտարականն մականուանեալ (Extraneus)[1]: Զայս տեղի՝ մի 'ի քաղաքաց Կիլիկիոյ ցուցանէ և Աննա Կոմնենա յԱլեքսիատն, Լոնգինիաս անուանելով (Λογγινιαδα), զոր ընդ Տարսոնի, Ատանայ և Մսայ՝ նուաճեաց ասէ Մոնաստր՝ զօրավար Ալեքսի հօր իւրոյ, յամի 1104: — Մերձ է 'ի Զէթուն և 'ի Մ. Հս. Սօղախ լեառն, յորում քարայր մի մեծ և պաղանձաւք 'ի ջուրցն ծորանաց: — Ըստ լերանցն և այլևայլ վտակօք ջուրց պատեալ է քաղաքաւանն. որպիսի է Սէւ ջուր՝ իջեալ 'ի Սաղտալը լեռնէ, յորոյ վերայ արկեալ են կամուրջք կոչեցեալք՝ Սէւ աղբիւր, Չուխուր, Գասրա քէչիչ, Աղբիւրով՝ մերձ 'ի Զէթուն. Աղաձարկի ջուրն, զոր ժողովէ գետակն իջեալ 'ի Պրիտ լեռնէ, և ունի կամուրջ Ղարսի կոչեցեալ՝ 'ի սահմանս այգեստանեայց աւանին. են այլ ևս կամուրջք երկուստեք աւանին, յորս մեծամեծ խաչք են ագուցեալք երկաթիք՝ 'ի պահպանութիւն նորին:

Թէ և 'ի բարձրաւանդակի լերին կայ Զէթուն, այլ 'ի միջի զօրով վերահայեաց գագաթանց՝ ձորանիստ երևի յ՝3500՛. և ընդարձակի իսկ փոքր մի ձորն 'ի բաւականութիւն բերելոյ այգիս անգամ և թզենիս և բամբակ, գուշակք բարեխառնութեան կլիմային և բարգաւաճանաց տեղւոյն. զորոյ զգիրս և զբերս այսպէս ստորագրէ բնիկն Կարապետ կաթողիկոս՝ յամի 1727, Քաղաքագիւղ անուանելով զայն. « Որ շինեալ կայ 'ի մէջ երից մերձակայ լերանց, Պարզնկոյ, Այրածոյ և Կանկռատոյ, ընդգոգացեալ ներ ձորում բարեբերի, ուր լինի այգի, ձիթենի, նռնենի, թզենի, և այլն, և ամենայն ըստ կարգի, այլ և բամպակ և մետաքս՝ որ է ապրշում. և հանք երկաթի. որ ըմպէ զջուր բարեհամ կարկաջուն փոքր գետոյն՝ որ հոսի 'ի լեռնէն Պրիտոյ, որ Թարգմանի ցուրտ, վասն մշտագիւտ ձեանն որ 'ի նմա: Այսացեալս զեօղ ունի յարևելս՝ առ ոտս Պարզնկոյ լերին՝ զառաքելաշէն վանս զՍուրբ Աստուածածնի. և այլ յառաջ դէպ 'ի հարաւ՝ զդաշտն արգաւանդ, որ ունի զբժըշկարար ջուրն Ջերմկոյ, և զքանչելի եկեղեցին Ամենափրկչին »: — Աներկբայ նշանաւոր բերք բնութեան երկրին՝ է Երկաթն, որոյ գլխաւոր հանք, որպէս 'ի վերդ յիշեցաք, են 'ի Պրիտ, ուստի հանեալ՝ կռուեն նախ 'ի ստորոտ Սաղտալը լերին, և անտուստ յաշնայնի բերեն 'ի հալոցս և 'ի գործարանս իւրեանց. վասն այնորիկ տեղին այն տէօքիւմ կոչի (Թափոց, տեղի Թափելոյ): Այս մետաղ 'ի վաղուց հետէ առիթ է վաստակոյ, պարէնի, ժրութեան և չափաւոր ազատութեան՝ բնակչաց երկրին. որք ոչ միայն 'ի վաճառ հանէին զայն, այլ և 'ի կազմութիւն զինուց իւրեանց, 'ի տղայ տիոց վարժելով 'ի շարժել և 'ի կրել՝ ցաւագոյթ հաստակի, և 'ի լինել հարկի կռուոյ կամ պաշտպանութեան՝ 'ի հնգետասանամենից ցվաթսնամեայս՝ զինուորելով. բազում անգամ ընդ մեր֊



44. Զէթունցի.

ձակայ այլազգենիկսն մաքառելով, և երբեմն միաբանեալ ընդ նոսին՝ ընդդէմ հարստահարու կողմնակալաց, որոց սակաւ ինչ երբեմն հարկէին, և երբեմն ոչ, և մերթ իշխեցողին Քօզան լերանց, այն որ յայսմ դարու զօրացեալ բռնացեալ էր և այլոց շուրջ վիճակացն, Հաճնոյ և Սսոյ, փոխանակ Օսմանեան Դրանն՝ յինքն կորզելով զսակ հարկին. իսկ առքս մտադիւր տային ում և ազատութեան իւրեանց թուէր ճահագոյն:

71. Ոչ է մեզ յայտ ծագումն անուան Զէթունի, զի այսպէս գրի 'ի գիրս, իսկ այժմ 'ի հասարակ սովորութենէ Զէյթուն լսի. և ոչ հաւանիմք 'ի ձիթենւոյ ընծայիլ, և ոչ հաւատեմք 'ի Ծայթունեաց. անծանօթ և սկիզբն ազատակեաց հասարակութեան սոցին և անցք անցից յառա֊

1 Ալպերտ Aqui, Պատմ. Խաչակրաց:

ջին դարս. Հակառակ իմն բաղդի այլոց գաւառաց մերոց, որոց հին բարգաւաճանք և անցք եղելութեանց ծանօթք են 'ի գրոց, և վերջին անյայտացեալ 'ի խրթնութեան. իսկ սոցա սկիզբն անյայտ և ներկայս եկեալ 'ի յայտնութիւն: Հաւանութեան է, և գրեթէ և պատմական իսկ, զի և յետ բարձման թագաւորութեան Սիսուանեայց, յ'ամրագոյն լեռնակողմանքս տեւեցին տակաւին բերդատեարք ոմանք, որպէս յամուրս կողմանց Դրանցն Կիլիկիոյ, և յաւէտ յայս սահմանս Կապանոյ: Յիշատակագիր ոմն[1] դարու միով յետ գրուման հարստութեան Հայոց, գրէ զինքն լինել 'ի զարմէ Հեթմոյ վերջին սպարապետի Հայոց, որոյ և յետ գերութեան Լեւոնի պատերազմեալ էր ընդ Եգիպտացիս, և այրասիրտ կնոջ նորա Զարմանուհւոյ ձերբակալ արարեալ զորդի սուլտանին, զոր Գրիգոր ոմն մատնիչ արձակեաց՝ սպանեալ դՀեթում. յորմէ զանգիտեալ Զարմանուհւոյ՝ «փախեաւ 'ի լերինս Կոկիսոնի և Ուլնիոյ, և անդ թափառէր ամս հինգ. յետ հինգ ամաց ժողովեալ 'ի լեռնականաց արս երեքհարիւր, էառ ընդ որդւոյ իւրում (Գէորգայ) զԿապան, և ազատեաց զազգն 'ի ձեռաց այլազգեաց, ամս վաթսունեւհինգ: Զքաջութիւնս սորա և զառն իւրոյ Հեթմոյ և զորդւոցն իւրոց՝ գրեալ են 'ի գիրս յիշատակարանի վանաց Սրբոյն Կարապետի, և 'ի վանս Ս. Ստեփանոսի որ 'ի Կանչու, և 'ի վանս Ֆռնրզու. և զամենայն անցսն և զպատերազմունսն և զերկրաշարժըն մեծ և զսովն մեծ և զմահտարաժամն մեծ»: Գրող յիշատակարանիս՝ «իջեալ 'ի Հեթմոյ և 'ի Զարմանայ», որպէս ասէ, Կիրակոս ոմն է վարդապետ, յամի 1473, եղբայր Տեառն Յովհաննու երիցու Կանչուի՝ հօր Հեթմոյ և Լեւոնի. յորոց զարմէ էին՝ և Նորոգող գրոցն, յամի 1557, Ղուկաս վարդապետ վանահայր Զէթունի կամ Ս. Կարապետի, և եղբայր նորա Մատթէոս քահանայ՝ հայր Սարգսի և Լեւոնի: — Արժան է հաւատալ 'ի յիշեալ վանորայսն գյիշատակարանս գրոց և զկոնդակս եկեղեցեաց, յորոց մարթ է արտահանել կարեւոր ծանօթութիւնս զանծանօթացեալ դիպաց և անձանց տոհմայինս պատմութեան. յիշեալս աստէն՝ առաջին ծանօթութիւն է իմ զտեղեացս և զքաղաքաւանէս՝ զորմէ բուռն հարեալս է ստորագրել:

Բայց է և նախնագոյն և սրբագոյն ամենայն յիշատակաց կողմանցս. Նահատակութիւն Ս. Ստեփանոսի Ուլնեցւոյ, և մօրն և ընկերաց՝ երեսունեւվեց անձանց, միաբանելոց յայլեայլ սահմանաց, և շատից 'ի Կոկիսոնէ, ուր և ծնողք Սրբոյն՝ Ղազար և Մարիամ՝ կէին գաղթեալք յԱնտիոքայ, և ինքն անդ ծնեալ էր և սնեալ. և 'ի ժամանակի հալածանաց Յուլիանոսի՝ 'ի գալ անդր Սոկրատայ դատաւորի՝ խոյս ետուն հաւատացեալքն և եկին 'ի լեռնակողմանքս. աստ Ստեփանոս կամ մի ոմն յընկերացն Սոմնաս անուն՝ երթայր 'ի լեառն մի հովտաձեւ տափարակ, կամ «'ի լերինն հովտաձեւ 'ի տափարակն», ժողովել կանկարս վայրիս, (յորմէ մարթ է գուշակել ինչ զընութենէ և զբարձրութենէ երկրին). անդ ըմբռնեալք մատնութեամբ հովուի միոյ՝ վարեցան յատեան դատաւորի, որ 'ի Կոկիսոնէ եկեալ էր 'ի բերդն՝ «որ այժմ կոչի Կանչի», ասելով՝ հին վկայաբանին կամ մերազնոյն Գրիգորի, գտեալ 'ի Կ. Պօլիս 'ի յոյն լեզու և թարգմանեալ 'ի ԺԱ կամ 'ի ԺԲ դարու[2], ցուցանէ զի առ Յոյնս կամ 'ի հնումն այլով անուամբ կոչէր տեղին: Անդ դատեալ Սրբոցն, մայրն և կուսանքն նահատակեցան «հանդէպ ձորակի միոյ առ ստորոտով լերինն». իսկ վասն Ս. Ստեփանոսի և ընկերացն պատուիրէր դատաւորն Սոկրատ, «Տարջիք 'ի ձնեղեանն և սպանջիք զնոսա...: Հասին 'ի տեղի կատարմանն՝ 'ի խորագոյն ձորակի միոջ, հանդէպ կուսանացն կատարելոց, հեռագոյն սակաւիկ մի». և հրով փորձեալ և անկէզ մնացեալ՝ կատարեցան սրով. զորոց մարմինս ժողովեալ հաւատացելոցն՝ շինէին առ տեղեաքն երիս եկեղեցիս, զմին 'ի վերայ սրբոց կուսանացն՝ որ կոչի Սուրբ Կաթողիկէ, զմիւսն 'ի վերայ արանց՝ ընկերաց սրբոյն Ստեփանոսի, և զմիւս 'ի վերայ սորին նշխարաց՝ որ և կոչի Ս. Ստեփանոս, «հանդէպ աղբերն զոր բղխեաց 'ի պէտս բժշկութեան, որ կայ մինչեւ ցայսօր, և է պատճառ շինութեան տեղւոյն»: Քանզի հայր Սրբոյն յառաջագոյն վախճանեալ և թաղեալ էր (ըստ ոմանց յԱստուածաշէն լերին՝ յարեւմտից Կապանայ), զատ յերկոցուն սոցա է համար «Երից տասանց և չորից ընտրելոց 'ի Տէր», զորս տօնէ եկեղեցիս մեր առանձինն շարականաւ ներբողելով. յորմէ և յայտ է թէ 'ի վաղուց հաստատեալ էր պաշտօն Սրբոցն, որք հանդերձ տեղեաւ նահատակութեանն ընդ հայկականս գրէին. զայս հաստատէ և յետին տուն շարականին. «Ծնծութիւն եկեղեցւոյ ընտրեցար 'ի Հոգւոյն, և լուսաւորեցեր զորդիս Թորգոմայ. այսօր բերկրին հաւատացեալք և տօնեն զձգնութեան քո զհանդէս. աղաչեա զԱստուած չնորհել մեզ զկեանս անվախճան»: Արդարեւ խնդալի է ցարդ յայնպիսում առապար և զանխուլ վայրի՝ զաւանդըն սրբազան պահել քաջարանչուկ և քաջահաւատ որդւոցն Թորգոմայ, 'ի միջի այլադենից և այլալեզու որդւոց Թիւրքմէնից. թէպէտ և սոքա իսկ պատուեն զտեղին և զցրտաբուղխ աղբիւրն, ուր ուխտ մեծ կատարի յաւուրս Յինանց: Ո՛ գիտէ թէ և մեծին Ոսկիբերանի չիցէ յաջողեալ 'ի ժամանակի աքսորանաց իւրոց 'ի Կոկիսոն՝ գալ յուխտ Սրբոյն՝ որդւոյ հայրենակցի իւրոյ (Ղազարու Անտիոքացւոյ), տալ զոլով ինքն յաւուրս նահատակութեան նորին: Երաշխաւոր համարեսցի կարծեացս՝ պատմութիւն վարուց մեծի հայրապետին՝ գրեալ յամի 1328, «'ի սուրբ և 'ի մեծափառ և 'ի հռչակաւոր ուխտս Ս. Ստեփանոսի Ուլնեցւոյն և երեսուն և չորս ընկերացն իւրոց». որպէս ասէ գրիչն (Ստեփան), յիշելով և զառաջնորդ և վերատեսուչ «սուրբ և քաջամարտիկ վկայիցս» զհայր Թորոս, զփակակալն Կոստանդին, զտնտեսն Բարսեղ, և միաբանս յանուանէ տասնիչափ: Ոչ յայսմ յիշատակարանի, ոչ 'ի վկայաբանութեան անդ 'ի հնումն և ոչ 'ի հետեւողս նորին 'ի Յայսմաւուրս՝

1 Ասորիք ըստ յիշատակարանի Շարականի միոյ 'ի վանս Զէթունի, հրատարակեալ 'ի Մանզումէի Էֆքեար լրագրի, (1870, թիւ 1116). բայց ստուգութիւնն ոչ թուի խապառ անհերքելի, որպէս և ոչ քերականական շարագրութիւն լեզուին:

2 Ճառընտիրն՝ յորում ընթեռնումք զվկայաբանութիւնս այս՝ գրեալ է հնաձեւ տառիւք և թուի գործ ԺԲ դարու:

գտանի անուն Ուլնիոյ կամ Ուլնի, որպէս համարի կոչիլ տեղւոյ նահատակութեան Սրբոցս, որ յայժմուս՝ ըստ ոմանց է Հին Փռնուզ, ըստ այլոց՝ Ջէյթուն. այլ զինչ պատճառ հին կոչման և ծագումն նորոյս, կամ թէ ճշգրիտ նոյն երկոքին, և անընդմէջ անտ՝ թէ սակաւ մի հեռագոյն իցեն տեղիք նահատակութեան նոցին, ոչ ունիմ հաւաստել աներկբայապէս։

Ցետ նախայիշեալ պատմական յիշատակի ԺԵ դարու, այն է Զարմանուհւոյ ապաստանելոյ 'ի լերինս Ուլնիոյ, առաջին յիշատակ Ջէթուն անուամբ ծանօթանայ ինձ յետ կոյս ԺԶ դարու, յորում յիշի եպիսկոպոս տեղւոյն, մի յերից կամ չորից ստորագրողաց թղթոյ վկայութեան առ Գրիգոր ԺԳ Պապ՝ յամի 1586, վասն ընտրութեան Ազարիայ վարդապետի 'ի յաջորդութիւն Խաչատրոյ կաթողիկոսի Սսոյ։ Ցետ տասն ամաց (1596) գտանեմ գիրս մի Ջեռնադրութեան գրեալ վասն Ցակոբայ եպիսկոպոսի «'ի Ջէթունոյ վանքն 'ի Սուրբ Աստուածածնի դուռն, » յառաջնորդութեան Տէր Ծերուն արքեպիսկոպոսին », որպէս ցուցցէ նօտրաձև գրեալ պատճէն յիշատակարանին։ Զվանքս զայս և զառաջնորդարան Ուլնիոյ՝ որ կայ 'ի ստորոտս Պարզընկայ լերին, Կարապետ կաթողիկոս առաքելաշէն կոչէ, նշանակ քաջ հնութեան, զորոյ ցան-



45. Ջեռնադրութեան գիրք գրեալ 'ի Ջէթուն յամի 1596.

կալի էր ունել հաւաստիս 'ի կենդակաց աթոռոյն՝ եթէ գուցեն։ — Ցետս ԺԶ դարու և 'ի սկիզբն ԺԷ^ւ^ յիշի բազում անգամ վսեմն երէց ոմն Ջէթունցի քաջ քարտուղար, որում բազումք աշակերտեալ են, որպէս Ցակոբիկ դպիր՝ որ և էր «'ի գիւղաքաղաքէն Ջէթունայ», և գրնացեալ 'ի Սեբաստիա՝ օտարութեամբ և տրտմութեամբ ընդօրինակէր գիրս ինչ, և երախտեօք յիշէ զուսուցիչս իւր, և «զհամշիրակ և զհամնոէզկեն գրչութեան զեղ- » բայրն՝ զԱլեքսիանոս դպիրն»։ Նոյն դարձեալ գրէ անդ և յամի 1608, յիշելով զնոյն ուսուցիչսն, և թէ «ղարիպ » էի և սրտիկս տրտում... ոչ ոք 'ի մարդկանէ 'ի վրայս » խնամք չտարան, համապազ լայի և տարակուսեալ էի. » բայց հէմշէհրին իմ Ջէթունցի մղտեսի Առաքելն՝ (սարկաւագ) որ էր վաճառական, նա տանէր զիս իւր օտայն » և մխիթարէր մարմնաւոր կերակրօք և ըմպելեօք, և » ասէր. Եղբայր, մի հոգա, ես հանեմ զքեզ այս դառն » և դժար աշխարհէս [1] »։ — Նոյն ինքն Վահան գրէ յամի 1625, «'ի գիւղաքաղաքս 'ի Ջէթուն, ընդ հովանեաւ » սրբոյն Սարգսի Զօրավարին և այլ ամենայն սուրբ տաճարացս և սրբութեանց... 'ի յառաջնորդութեան յայս » մեր գաւառիս Տէր Մկրտիչ արքեպիսկոպոսի և Տէր » Վարդան եպիսկոպոսի և Խաչատուր վարդապետի, և

1 Քանզի ասէ. «Լսէի զձեռղն ձայն քաղաքին մերոյ Գերմանիկէ, որ է Մարաշ, որ էր սով և սուգ. վեց դրեմ հացն 'ի փարա մի, և էր որդիքս իմ անդ, ոչ եկող կայր և ոչ գնացող։ Այսպիսի տառապանօք գրեցի զՇարականս, 'ի լաւ և յընտիր օրինակէ», և այլն։

» այլ ամենայն եղբարցն որ սպասաւորեն սուրբ ուխտիս » մերոյ » . յիշէ զհայրն Աւետիս, զմայրն Զմրուխտ, զեղբարսն՝ Տէր Ներսէս եպիսկոպոս և Տէր Ստեփանոս և Կոստանդին։ — Ա՛յլ աշակերտ Վահանայ Յովհաննէս անուն՝ գրեալ է յամի 1629 ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի և Ս. Գրիգորի շարական մի վասն Տէր Ռստակէս քահանայի, յառաջնորդութեան գաւառին Տ. Մկրտչի։ Նոյն և յամի 1634 գրէ անդ ժամագիրս վասն Պետրոսի աբեղայի, յիշելով ընդ բազում ազգականաց նորին՝ զանմոռանալի ուսուցիչն « զՏէր Վահան քաջ քարտուղարն ». և 'ի միւսում ամի 1635, գրեալ է անդ Սաղմոս փոքրիկ[1]։ — Յայլում մատենի գրելոյ 'ի նմին ամի և յառաջնորդութեան վանացն նոյն Մկրտիչ արքեպիսկոպոսի, յիշին ութ եկեղեցիք Զէթունի. Ս. Սարգիս Զօրավար, Ս. Հրեշտակապետք, Ս. Յակոբ Մծբնայ, Ս. Աստուածածին, Ս. Կարապետ, Ս. Գրիգոր Լուսաւորիչ և Պարսամ և Թէոդորոս։ Յայլում մատենի գրելոյ յամի 1666 վասն Տէր Կարապետ քահանայի որդւոյ Տեառն Պետրոսի՝ յիշին նոյնք. այլ և Թորոս քահանայ, և որդի նորա Գասպար դպիր, Ահամ Ոսկան որդի Աստուածատրոյ, Իբրիմ սարկաւագ, և այլն. Յովհաննէս Գրչապետ ուսուցիչ գրողին՝ Յովհաննու որդւոյ Նոյ երիցու և Մարգարտի, Ստեփանոս վարդապետն, և այլն. ընդ որս և առաջնորդ վանացն Տէր Մովսէս աստուածաբան վարդապետ։ Յիշեալդ Ստեփանոս վարդապետ Թուի կոչեցեալն Սալլու, այն որ ընտրեցաւ յեպիսկոպոսութիւն Գաղատիոյ իբր յամի 1677, և հովուեալ ամս վեշտասան կամ ութևտասն՝ հրաժարեցաւ (1694), փափագելով առանձնանալ յԱստուած և 'ի հայրենիսն, ուր և հանգեաւ յետ սակաւ ամաց (1697) 'ի վանս Ս. Աստուածածնի, փոխանակ իւր կարգելով յաթոռն Անկիւրիոյ զհայրենակից իւր՝ զանուանին Կարապետ վարդապետ՝ յետոյ կաթողիկոս Էջմիածնի։ — Սա՝ որպէս պատմէ յերկարագոյն զանձնէն՝ 'ի յիշատակարանի անդ Աստուածաշունչ գրոցն, ծնեալ էր 'ի Զէթուն յամի 1661, 'ի Մարտիրոսէ Տահուկ կոչեցելոյ և 'ի Մարեմայ, « եօթնամսենի » ծնեալ, ասէ, և եօթն ամ զկաթն առեալ 'ի մօրէս, » յաղագս որոյ Ծըծկեր եմ մականուանեցեալ » . յետ մահուան ծնողացն լուեալ զեպիսկոպոսանալ հայրենակցին իւրոյ՝ յաթոռ Գաղատիոյ, գնաց առ նա, և վարժեալ ընդ ձեռամբ նորին՝ էառ 'ի նմանէ զկարգ քահանայութեան (1681), և զգաւազան վարդապետութեան (1684 և 1687), և բազում սպաս հարեալ նմա 'ի նորոգութիւն վանացն և 'ի նուիրակութիւնս, առաքեցաւ առ Նահապետ կաթողիկոս առնուլ զօծումն եպիսկոպոսութեան և լինել յաջորդ տեղւոյն, զորոյ և կալաւ զաթոռն աւելի քան զերեսուն ամ (1694–1726). և էր « այր չքեղ և » փառազարդեալ » , ըստ աւելոյ Ղազարայ Ջահկեցւոյ։

Յերկար ամս աթոռակալութեանն բազում շինութիւնս և նորոգութիւնս արար յեկեղեցիս և 'ի վանս Գաղատիոյ, ճոխացուցեալ սպասիւք և գրենով, զորս և ցանկեալ աւանդեաց ձեռնասուն աշակերտի իւրոյ Մովսիսի վարդապետի. ընդ որում յամի 1705 գնաց յուխտ յԵրուսաղէմ, 'ի Հռոմկլայ, և 'ի հայրենիս իւր, ուր և եկացն ամիսս չորս, վասն չփոթից ժամանակին և երկիւղի ճանապարհաց՝ յերեսաց ապստամբաց, և 'ի տեսութիւն եղբօր իւրոյ Ստեփանոսի երիցու։ Գրէ և ընկեր իւր և յաջորդ Մովսէս վարդապետ, թէ « Անդ ('ի Զէթուն) զուխտս » մեր կատարեցաք, թէ 'ի Ս. Փրկիչն, թէ 'ի Սուրբ Աստուածածնայ վանքն, և թէ յԱնանիա առաքելոյն սուրբ » աջն, որ 'ի Զեյթունոյ վանքն կայ, և ուսուցչին մերոյ » գերեզմանն (Ստեփաննոս եպիսկոպոսի) . և անդէն » զտեղի կալաք աւուրս հարիւր և քսան, յահէ Թորգոմանց, » որ իբրև զառիւծ շրջէին շուրջ զմեօք. բայց յետոյ փախստեայ ճանապարհաւ հազիւ հասաք 'ի Հաճնոյ վանքն, առ Ովաննէս կաթողիկոսն » ։ Յետ այլոց ևս շինութեանց՝ 'ի վախճանել Աստուածատրոյ կաթողիկոսի՝ ընտրեցաւ Ուլնեցիս Կարապետ 'ի Կ. Պօլիս, և արքունի հրովարտակաւ գնաց յԷջմիածին (1726), և կալեալ զգահն ամս հինգ՝ վախճանեցաւ յամի 1730։ Խօսելով զհայրենեացն 'ի յիշատակարանի Ս. Գրոցն՝ ասէ, « Լեալ » նախագոյն ձոխ և փարթամ. արդ վասն մեղաց մերոց » նուաստացեալ և աղքատ. բայց ունի տակաւին զեօթանեսին եկեղեցիս, որոց մեծագոյնն է Սուրբ Աստուածածինն » , որիչ 'ի համանուն վանացն։ Յիշէ նա և զՅովհաննէս վարդապետ հայրենակից իւր, զայր ճգնող և պահեցող, որ ամս երեսուն օգնական եղև ինքեան 'ի Գաղատիա, և յամի ընտրութեան իւրոյ 'ի կաթողիկոսութիւն վախճանեալ՝ եթող բազում սպասս և մատեանս յաթոռն Անկիւրիոյ։ — Ընծայեցան յՈւլնիոյ և յաթոռ Սսոյ՝ կաթողիկոսունք, յորոց ծանօթք Սիմէոն (1539), և յաջորդ նորա Ղազար (1545), Խաչատուր Բ մականուանեալն Երաժիշտ (1560–1584)։ — Առաջնորդք այսինքն եպիսկոպոսք կամ արքեպիսկոպոսք Զէթունի նստեալք 'ի վանս Ս. Աստուածածնի, ոչ գիտեմ յորմէ հետէ, կամ յոր անուն, ծանօթքն ինձ՝ հանդերձ վերոգրելովքդ, են,

1586 Յովհաննէս
1596 Ծերուն
1625–34 Մկրտիչ
1666 Մովսէս
1720 Կարապետ
1800 Յովհաննէս
1806 Յարութիւն
1808 Միքայէլ
1817 Յակոբ Պօստանեան[2]
1821 Պօղոս
1823 Յակոբ Պարմաղը-քէսիկ
1826 Մատաթիա
1828 Մարտիրոս
1867 Սարգիս[3] Գուլիկեան
Գրիգոր Վ. Արարատեան
Սահակ Վ. Քէօչէկեան
Ստեփան Վ. Աղձապէկեան
Կարապետ եպիսկոպոս. 1883

1 « Գրեցաւ սա 'ի մեծ թվին Հայոց ՌՁԴ, 'ի յերկիրս Գերմանիկոյ, 'ի գիւղաքաղաքս 'ի Զէթուն, ընդ հովանեաւ Սրբոյ Լուսաւորչին, և Մօրն Լուսոյ Ս. Աստուածածնին, և այլ Սրբոցս՝ որ աստ կան 'ի յօգնութիւն Հայոց տոհմին » ։

2 Ըստ այլոց՝ յառաջ քան զսա եկաց այլ ոմն Յակոբ՝ Պըչտեան մականուանեալ. իսկ յետ նորա (Պօստանճեանին) մի ըստ միոջէ կացին յառաջնորդութեան եպիսկոպոսք և վարդապետք այսոքիկ.

Յովհաննէս Զարանճացի
Յարութիւն Վ. Տէրդաւթեան
Սարգիս եպիսկոպոս Խանդքարեան
Յովհաննէս եպիսկոպոս Էօքսիւզեան
Սարգիս եպիսկոպոս Գուլիկեան, և այլք։

3 Սա առ ծերութեան հրաժարեալ՝ նստէր 'ի վանսն, և կենդանի էր 'ի ժամանակի գրութեանս, յամի 1882։

Ի Թիւ եկեղեցեաց քաղաքաւանին յաւելեալ է և Ս. Պետրոս և Պօղոս. զՍ. Յակոբ նորոգ շինեալ են քարուկիր, և 'ի պեղելն յայտնեալ է գերեզման Գաբրիէլի ուրումն ճգնաւորի շինողի հին եկեղեցւոյն' որ կէս փայտակերտ էր: Ի փոքրիկ եկեղեցւոջ Ս. Յովհաննու պահի մեծ պաշտպանակն Զեթունի' աւետարան մի, վասն աւետրոց կոչեցեալ, ոչ գիտեմ ե՛րբ գրեալ և յո՛ր Վասիլ անուն, Գողոյի՛ թէ այլոյ. յոր երդնուլն վաւերագոյն համարի, և զօրութիւն մեծ' 'ի վտանգս և 'ի գործ պատերազմի: — Արտաքոյ և հեռի 'ի քաղաքաւանէն ժամաւ և կիսով ևս յՍստուածածնի վանից' 'ի հարաւոյ արևելից' յանուանեալ Իլիճէ հովտին, ուր ջերմուկք են, կայ և հոյակապ վանքն Ս. Փրկիչ կամ Ամենափրկիչ, յորոյ 'ի ներքուստ սեղանոյն բղխէ աղբիւր ցուրտ ջրոյ և ժողովի յաւազանս առ դրան տաճարին. ըստ աւանդութեան տեղացեաց' Բարդողիմեայ առաքելոյ հիմնեալ է զեկեղեցին և զջուրն բղխեցուցեալ: Իբրև քառորդաւ ժամու հեռի 'ի վանացս' 'ի կողմն քաղաքաւանին Զեթունի կայ մատուռն մի ուխտատեղի Ս. Կատարինէ կոչեցեալ, զոր և ասեն լինել մի յընկերաց Ս. Ուլնեցւոյն. Թերևս տեղի նահատակութեան կուսանացն իցէ: — Գոն և ուխտատեղիք ուրեք ուրեք, որպէս Ս. Եղիա կոչեցեալ գերեզման 'ի լերին, ժամաւ հեռի 'ի վանացս. յայլում լերին' մերձ 'ի քաղաքաւանն' Միհափեցնոց' տեղի ճգնութեան ուրուք: — Մատուռն մի ևս է ընդ մէջ Ղարսի կամրջին և այգեաց Զեթունի, Ս. Յակոբ կոչեցեալ, որ էր ասեն կօշկակար Մարաշցի, դարու միով յառաջ, և խեղդամահ եղև վասն հաւատոցն յիպիչայ ումեմնէ ոստիկանէ:

72. Այսքան բազմաթիւ եկեղեցիք, սրբութիւնք և վանորայք, և մատեանք գրեալք 'ի նոսին, հաստատեն զվկայութիւն Ուլնեցւոյ կաթողիկոսին, եթէ արդարև բարգաւաճ լեալ է երբեմն Զեթուն, և ոչ լոկ շահավաճառութեամբ, այլ և մտաւոր և կրօնական արգասեօք, և ոչ' (որպէս այժմեան կարծիս գրաւէ զմիտս') միայն 'ի կրթանս բազկաց և զինուց պարապէր կորովի գրոհն այն, ապաւէն կալեալ զամեհի բնութիւն առապար վայրացն. տեւելն իսկ հասարակութեանն ցմեր ժամանակս' հայրական օրինօք ներքին վարչութեան, առաջնորդութեամբ չորից իշխանաց 'ի քաղաքաւանին, և տեսչօք' (քեահեա) իւրաքանչիւր գեօղից յօդելոց 'ի նոյն, գերագահութեամբ եպիսկոպոսի իւրեանց 'ի խորհուրդս կարևորս, հաւաստիք են հայրենատուր աւանդից և հրահանգաց: Բայց և հարկ է ասել, թէ 'ի յետին ժամանակս աճումն և հակառակութիւն Թուրքմէնից և Աֆշարաց' մերթ ընդ միմեանս և մերթ ընդ օսմանեան կուսակալս կողմանց Կիլիկիոյ և Մարաշոյ, և եկք այլոց անկիրթ տոհմից, որպէս և առ մեօք իսկ կովկասայնոց Չէրքէզից, պատերազմունք Եգիպտացւոց ընդ Դրանն, բռնանալ Քօզանեան եղբարց 'ի վերայ շուրջ սահմանացն, այս ամենայն վրդովեցին և պարտասեցուցին, այլ ոչ 'ի սպառ սրտաթափ արարին զՈւլնեցիս: Ի հաշտութեան ժամանակի պայմանեալ էր, ոչ գիտեմ յորմէ՛ հետէ, հատուցանել Զեթունեաց' իբրև հարկ արքունի' 60,000 դահեկան, զոր' յապստամբելն, զլանային որպէս և յամի 1819, յորում իբրև համախոհ նոցին ամբաստանեալ լինէր Կիւրակոս կաթողիկոս' 'ի Կ. Պօլիս, և արդարանայր, և ոչ առնոյր յանձն ինքնին հատուցանել զհարկ նոցա 'ի Դուռն, զի ոչ վստահանայր 'ի հնազանդութիւն նոցին: Ի ժամանակի պատերազմաց Իպրահիմայ' (1830-40) միաբան գտան լեռնականքն հակառակել նմա. և յետ այնր' 'ի յօրանալ և յոխորտալ Քօզանեանց' գիտացին չափաւոր զիջմամբ կալ 'ի կչիռ, մինչև ցմեծ և ծանօթ դիպուած 1862 ամին, որոյ' (ըստ օրինի ամենայն մերձաժամանակ այլ հեռավայր իրաց)' չեն քաջ ծանօթ պատճառքն և հանգամանք, պէսպէս համբաւեալք. զորոց չէ մեզ խոյզ և խնդիր առնել աստանօր, այլ համառօտիւ զհաւանականն կարծեալ' յիշել: Յամարայնի այնր ամի վէճ իմն և կռիւ յուզեալ յայլազգի բնակիչս Քէրմէճ կամ Քէրբմէճ կամ Քիւրտմէճ գեղջ' որ 'ի ստորոտս համանուն լերին, յարևելակողմն Զեթունի, իբրև եօթն մղոնաւ հեռի, վասն վարի և հնձոյ գետնի միոյ, նեղեալքն 'ի կռուին' օգնութիւն խնդրեն 'ի մերձաւոր Պէչէճ գեղջէ որ և Քիսիր. Քէրթմէնցիք թողեալ զընտանի կազմն' վանեն զօտարսն, հանդերձ արեան հեղմամբ. ընկրկեալ Պէչէնցեաց' յօգնութիւն և ինքեանք կարդան զհույս մեծի Ալապաշ գեղջաւանի որ 'ի հարաւոյ Զեթունի. զգիր գեղջն Կարապետ և երկրորդ նորին Յակոբ առեալ սակաւաթիւ խումբ մի զինելոց' դիմեն խաղաղել զաղմուկն. այլ ընդդիմութիւն գտեալ 'ի Քէթմէնեաց' զինաշարժութիւն և մահուանք լինին երկուստեք. անկանի և Յակոբ 'ի Հայոց կողմանէ, այլ յաղթականք սոքա լինին և վանեն, թերևս և աւերեն զարարս ինչ հակառակողացն. որոց ոչ կարելով այլազգ վրէժ խնդրել' գուժկան առաքեն առ կուսակալ Մարաշոյ, եթէ Հայք վայրապար կոտորեն զիսլամս. ընդ հակառակն Պէչէնցիք ևս պատգամաւոր առաքեալ' ջատագով կան Հայոց: Բայց յառաջին համբաւոյն յուզեալ Իսլամաց և մանաւանդ գլխաւոր անուանեալ (պաշըպօզուգ) զօրականին' 'ի վրէժ բողոքեն. զիջեալ և կուսակալին (Ազիզ փաշայ), փութայ նուաճել զաղմուկն և զկարծեցեալ ապստամբութիւնն. 5 կամ 6000 ասեն զհետևող և զյառաջող ազատագլուխ հրոսուն, որք յայրեաց յաւեր դարձուցանեն զԱլապաշ, կոտորելով զանկեալսն 'ի բուռն, քանզի բազմութիւն բնակչացն խոյս տայր 'ի Զեթուն: Խռովի քաղաքաւանն. փութան իշխանքն գումարել 'ի ժողով և 'ի զօրակոչ, և յամրութիւն սահմանաց' ընդդէմ հրոսուն, որ սպառնալեօք և աւերածութեամբ մերձենայ. յետ որոց և ինքն Ազիզ փաշայ' անցեալ ընդ Ջահան գետ, ընդ Զագըր-տէրէ գիւղ (150 տամբք), աւեր ածելով, և ընդ Ալապաշ, ուր բռնութեամբ և պատերազմաւ վանեալ զգիւղականսն, և հրկէզ արարեալ ըզտունս, գումարի յիլիճէ հովիտ' առ Ամենափրկչի մենաստանաւ, յորում միանձունք երեք կամ չորք և պառաւ մի սպասաւոր' խողխողին, թերևս յանգէտս զօրավարին, և չուն սպանեալ արկանի 'ի վերայ դիականց նոցին. աւերին և աղօրիք և դարբնոցք տեղւոյն: Պատգամ առաքէ Ազիզ առ Զեթունցիս զինաթափ լինել, տալ պատանդս և տուգանս. իսկ նոցա կասկածեալ' չառնուն յանձն, և զգուշանան անցիցն' յայտնի և գաղտնի պահպանութեամբ. և ապա 'ի խուռն յարձակել զօրականին

('ի 14 օգոստ.) հանդերձ հրետօք, զդէմ ունին և նոքա օգնութեամբ դարանակալացն. և ժամս չորս ոգորեալ՝ ընկրկին յարձակողքն, թողլով զբանակետղն և զհրանօթս, և ոգիս իբրև ութհարիւր, աւելի կամ պակաս, և շտապաւ դառնան 'ի Մարաշ. գործելով և զճանապարհայն նախճիրս, սպանեալ զաղօթական կրօնաւոր մի յԱստուածածնի վանս, և զայլս այլուր։ Մինչև 'ի նոր ինչ ձեռն արկեալ կուսակալին Մարաշոյ՝ հասանէ նմա հրաման հրաժարելոյ յիշխանութենէն, և փոխանակ նորա առաքի Աշիր փաշայ՝ հանդերձ հրահանգեալ զօրօք. գան և քննիչք՝ ստուգել զպատճառս աղմկին. և յետ երկարաձիգ բանագնացութեանց և դատից տոհմին իշխանք Զէյթունի երթալ 'ի Կ. Պօլիս, անուանեալքն Աստուածատուր Եէնիտիւնեան օղլու, Մարտիրոս կամ Նազարէթ Սուրենեան, Ղազար Շուր օղլու և Մկրտիչ Ցախըրեան[1]։ Յետ բազում և յերկար քննութեանց և արգելմանց, և միջամտութեան ևս դեսպանաց օտար պետութեանց, և խնդրելոյ Ունեցեաց զպաշտպանութիւն նախագահի կամ պատրիարքի Հայոց կաթոլիկաց, արձակին արգելեալ իշխանքն, սահմանէ Պետութիւնն օսմանեան կարգել ինքնին տեսուչ Զէյթունի և հարկաժողով, ընդ վերագոյն իշխանութեամբ կուսակալին Մարաշոյ, որպէս և յառաջն։ — Ի նմին ժամանակի նուաճին խպառ և Քօզանեանք, և կերպարանափոխ լինի վարչութիւն լեռնակողմանց Կիլիկիոյ։ Լինին դարձեալ չփոթք ինչ և յամի 1872, յոր սակս կալանաւորին ոչ սակաւք ոմանք յՈւլնեցւոց, ընդ որս և Նիկողայոս եպիսկոպոս Ֆռնուզի 'ի Մարաշ, և անդրէն խաղաղին և հաստատին սահմանեալքն 'ի 1862–3 ամի։ Համարձակ լինի այնուհետև երթևեկ կողմանց լերանցն. ընդ քաղաքականին և կրօնականն, զի և հռովմէական դաւանութիւն մուտ գտանէ. և անուանեալն Միացեալ Ընկերութիւն Հայոց Կ. Պօլսի՝ հաստատէ վարժոցս մանկանց և աղջկանց 'ի Զէյթուն, յամի 1879։

Ի նախակարգեալ ցուցակին տեսանի թիւ բնակչաց Հայոց 'ի Զէյթուն քաղաքաւանի աւելի քան զ'17,000, որ պահանջէ իբրև 2000 տունս. այլ են որք ցարդ՝ որպէս և քառասուն ամօք յառաջ 1000 տուն միայն ասեն. այլք 1500, և ոմն 'ի մերայոց[2] յամի 1863 գրէր 5000 տունս. ըստ այսմ համարելի են և այլոց գեղջէից նշանակեալ թիւք։

* * *

73. Ի տեղագրելս զլեռնակողմանքս Ջահանայ և առանձինն զվիճակ Զէյթունի, որպէս և ծանուցի՝ չէր իմ հանդիպեալ եւրոպացի ուղևորի այցելուի և ծանօթատուի տեղւոյն. յետ այնորիկ և յաւարտ գործոյս՝ գտի զճանապարհագրութիւն Փռանկի միոյ, որ առաջին՝ որպէս և ինքն ասէ, մուտ գտեալ է 'ի Զէյթուն յամի 1864, և եղեալ անդ զաւուրս երիս (27–9 յունիսի), միջնորդութեամբ Աբարտեան Գրիգորի վարդապետի, որոյ սակաւուք յառաջ երթեալ 'ի Բարիզ և շնորհս գտեալ էր 'ի Նաբոլէոն Գ. կայսերէ և յայլոց։ Ուղեգիրն՝ ոչ ուսումնական քննութեամբք՝ այլ ընտանօրէն իմն և խնամով պատմէ զոր ետես, և զընդունելութիւն զոր եգիտ 'ի Զէյթունեայց, զբարս նոցա և զճարտարութիւն, միանգամայն և զկերպարանս երկրին, ընդ որս հաւասար սքանչանայ. և մեր համարելով հաճոյանալ ընթերցանելեաց զգրեալս առաջին եւրոպացւոյ քննողի, առաջի արասցուք ըստ նորին բանից։

Սակաւ ընկերօք, սպասաւորօք և երկու զինապահօք զոր ետ նմա կուսակալն Մարաշոյ (ուստի անկաւն յուղի), և վեշտասանամեայ թարգման պատանեաւ որ գիտէր հայ և թուրք և արաբ, այլ և փռանկ և իտալացի լեզուս, էանց ուղևորն ընդ առապար լերինս անջրպետս Մարաշոյ և Զէյթունի. որովք յետ ժամուց ինչ՝ մինչդեռ նստեալ ընդ ստուար ստուեաւ 'ի ձորեզր հեղեղատի միոյ հանգչէր, երևեցան 'ի բարձրաւանդակում 'ի հանդիպոյն 12 զինեալք լեռնաբնակք, յորոց զինուց փայլատակունք հատանէին նշուլից արեգական. այլ զի ուս ընդ անութ ունէին զհրացանսն՝ ծանեան բարեկամս լինել և ոչ թշնամիս. որք և վաղվաղեալ իջեալ՝ ողջոյն մատուցին և հրաւէր 'ի դիմաց իշխանացն Զէյթունի, առաքեալք 'ի նոցանէ՝ ուղեկից լինել հիւրոցն, յորոց պատուեցան և ինքեանք։ Ամենեքին նոքա երիտասարդք էին, երիցագոյնն իսկ չէր աւելի քան քսանևհինգ ամաց, կայտառք, սիրունակք, քաջանշանք. մինչև զարմանալ՝ թէ զիարդ մարթ իցէ վտանգ ինչ 'ի մէջ այսպիսեաց՝ անպահապան գնալով[3]։ Եւ քանզի յոյժ համբաւեալք էին 'ի դիպաձիգ հրացանութիւն, փորձել կամելով ուղևորացն եդին քար մի փոքրիկ 200 Զափ 'ի բացի, և խոստացան դահեկան մի (մէճիտիէ) դիպուցողին. ոչ ոք դիպոյց, այլ ամենեցուն ևս գնտակք կառեան զնպատակաւն. սակայն նշանաւոր երևեցաւ յեղանակ հրացանութեան Զէյթունեայց. զի կատուանման վերելակեալ 'ի ծառս՝ և յեցուցեալ զգործին յոստ մի՝ արձակէին բաւականաւոր ուղղութեամբ[4]։

« Զիք գեղեցիկ քան զերկիր նոցա. շոճիք մեծամեծք,
» սօսք ստուարաստեղունք, կաղնիք կանաչազարդք՝
» հաճոյարար հանգիստ ընծայեն աչաց. վտակք մանուա-
» ծաւալք, հեղեղք ուղխինահօսք, աղբերք ականակիտք
» և սառնորակք՝ շիջուցանեն զծարաւ, և ածեն 'ի կա-
» ծանսն՝ դալարութիւն յարակայ, նաև 'ի լափլիզող
» տապս արեգական »։

Հրացան զուսով և ձեռք 'ի նոսին՝ թափօրպէս յառաջ խաղային լեռնականքն. և հասեալք՝ 'ի վտակ մի հզօր, բաց յերկուց զխաւորացն՝ այլք մերկացեալ մխեցան 'ի

[1] Զգլխաւոր իշխանացն Զէյթունի՝ Խօսրոյեան անուանէ ճանապարհորդն Փռանկ յամի 1864։

[2] Պարտիզպանեանն։

[3] Tous ces montagnards sont jeunes; le plus âgé ne dépasse pas vingt-cinq ans: tous ont l'air ouvert, aimable, distingué: nous avons peine à nous figurer qu'on risque quelque danger à passer au milieu d'eux sans escorte.

[4] Ils grimpent comme des chats dans un arbre, se cachent dans le feuillage, appuient le canon de leur arme sur une branche et visent avec assez de précision. — Rien de plus beau que leur pays. Grands pins, platanes énormes, chênes verts reposent délicieusement les yeux: ruisseaux qui serpentent, torrents qui se précipitent, sources limpides et glacées étanchent le soif et maintiennent les défilés dans un état de verdure permanent, malgré l'ardeur dévorante du soleil.

ջուրն, մրցելով յերագութեան անցից, և իբրև 'ի բնական տարեր իւրեանց՝ կանչելով և կայտռելով խաղային 'ի սրընթաց հոսանսն։ Արեգակն խոնարհէր 'ի թիկունս լերանց, և սիւգ ախորժ անկանէր զուղևորօքն և ոչ սառուցանէր. մերձ ընդ մերձ հրարձակ լինէին Զեթունցիք 'ի պատիւ նոցա. այլ ճանապարհն զամ քան զզամ դժուարակոխ լինէր. և 'ի չըջելն ընդ այլ կողմն՝ երևեցան հեծեալք ոմանք, որոց գլխաւոր՝ ճարտարութեամբ մղէր զերիվարն ամեհի. և պատմուճան նորա կարմիր ոսկէման, մովկքն կապոյտ, մաշկս սպիտակ ծածանեալ 'ի հողմն, և դէմքն արևակէզք՝ սևագոյն ևս երևեալք 'ի վերջալոյսն՝ հեծելապետ ոմն երևեցուցանէին զնա. և էր նա մի 'ի հզօրագոյն մարտկաց ընկերհաչտութեանն, իշխանն Խոսրոյեան, որ և վայելչութեամբ իմն մեծի իշխանի մատեաւ առ ուղևորսն. զհետ նորա գային գունդք քաղաքացեաց 'ի պատիւ, և ստէպ հրարձակութիւնք լինէին. այլ դժուարութիւն ճանապարհին ոչ սակաւ տագնապեցուցանէր զանփորձսն. զօրովք՝ մի ըստ միոջէ յաւելուին ուղէկիցք՝ յերկիր խոնարհելով 'ի պատիւ. նոյին փոխանակ ստիպէին և սոքա անդադար ձեռն 'ի լանջս ածել, մինչև 'ի լքումն բազկաց. նոյնպէս և ճայթմունք հրացանից և ատրճանակաց հրարձակութիւնք ստէպ լինէին 'ի լեռնէն. ուստի իջեալ Աքարտեանն ողջոյն մատուցանէր ուղևորին, և արկեալ զձեռն 'ի պարանոց երիվարի նորա՝ առաջնորդէր ընդ աղօտն. և ահա ըստուերք իմն ուրուականք երևէին 'ի վերայ լեռնակի միոյ, որ և յանկարծօրէն լուսաւորեցաւ, և իջին տասն ձիաւորք հրարձակք։ Եւ յետ տաժանելոյ իբրև ժամ մի 'ի խռովս անհնարինս՝ երևեցան տունք սակաւք յայնկոյս խորաձորոյ միոյ. և ուր ուրեմն հասին 'ի վանս (Ս. Աստուածածնի), յետ 12 ժամուց ուղևորութեան. և մեծագոյն ևս և ստէպ հնչէին հրացանութիւնքն հանգոյն ուժգին որոտմանց, առ 'ի պատիւ հիւրոցն, զոր չեմ բաւական, ասէ գրողն, բացատրել արժանապէս. և ցաւէ նմա զի ոչ կարաց նկարել զգիրս հիացուցիչ վայրացն. ընդ որ և մեզ իսկ ցաւէ ոչ սակաւ [1]։

Այն ինչ ելին 'ի դատիկոն մի մենաստանին՝ ելին յողջոյն հիւրոցն իշխանք, քահանայք, զօրագլուխք և պաշտօնեայք, և նստան. զուարթաբարոյ և հարցասէր երևեցաւ եպիսկոպոսն (Թուխ ծերունին Տէր Սարգիս), և բազմեցաւ՝ յորժամ բերեալ եղին սեղան բրնձով և կթեղինօք, ասելով, Սա փակեսցէ զբերան մեր։ Ուղէգիրն որոյ չէր տեսեալ զլօշ նուրբ, զառաջինն կարծէր զայն ճնճոց, և հաց որոնէր, և ուսաւ զի ոչ միայն հաց է, այլ և զդըրգալի և զպատառաքաղի սպաս հարկանէ։

Նկարագրէ զքաղաքն 'ի զառիվայր լերին դար 'ի դար, որպէս թէ մէն տուն այլոյ տան սանդուղ իցէ վերելից. փողոցք առապարք և ծամածուռք ստիպեն զուղևորս մեծաւ զգուշութեամբ գնալ՝ եթէ կամիցին մնալ ողջանդամ։ Զթիւ բնակչացն համարի 20,000. և գլխաւոր արուեստ նոցա զհալս և պատրաստութիւն երկաթոյ, զոր պէսպէս գործեն. լերանցն առատապէս մատակարարելով զնիւթ բովուց և փատակոյ և պարէնի։ Են 'ի քաղաքին և թուրքք սակաւաւորք, որոց թոյլ առնէ ազնուապէս վարչութիւն երկրին։ — Եկեղեցիքն գծուծք են, և նկարք պատկերացն անարուեստք. (յորոց եցոյց Խոսրոյեանն ստուար գլուխ մի Յովհ. Մկրտչի՝ 'ի փոքրիկ սկըտեղ, զոր բառնային երկու հրեշտակք փոքրկունք՝ յոյժ այլանդակք. իսկ արուեստ ճարտարպետութեան բնաւ իսկ չերևէր). և են թուով հինգ, իբրև մեծամեծ զետեղարանք (hangars) փայտաշէնք մեծաւ մասամբ, յորոց տգեղութիւն յաւելուն ապիկիք կարմիր և կապոյտ կախեալք կտորակօք պարանաց յիրար կապելոց խոշոր հանգուցիւք. 15 քահանայք են հնգից թաղիցն, յորոց ոմանք բնակեն 'ի վանսն։ — Ունի Զեթուն և զՊահպանակ իւր (Palladium), զաւետարան ստերդման Վլայի ուրումն. որ մինչ 'ի կարևոր հարկի տալոց էր երդումն և ստեաց, ձեռն աներևոյթ եհար զնա սրով, և արիւնն ցայտեաց 'ի վերայ աւետարանին. զայդ աւետարան 'ի մեծամեծ տօնս կամ 'ի վտանգս՝ հանեալ 'ի պատենից՝ տան պատուել հաւատացելոց [2]։ Անծանօթ են սոցա մեծամեծ զանգակք մեր (Եւրոպացւոց), որոց մարթ էր կործանել զզաղփաղփուն եկեղեցիս աղքատին Հայոց Տաւրոսի. այլ փոխանակ զանգակի՝ կոչնակաւ վարին. (և ստորագրէ զկոչնակն, այլ ոչ որպէս զմերս Նարեկացի. խոստովանի միայն զի կոչնակահարքն գաղտնի իմն արուեստիւ գիտեն ներդաշնակաւոր գործել զգանգիւնն)։

Նշանաւոր են 'ի Զեթուն ընկուզենի ծառք մեծամեծք՝ թուով վեց. էր երբեմն, ըստ պատմելոյ Խոսրոյեանի, զի ասպատակ Եգերացւոց եմուտ յերկիրն, կանանց և մանկանց. անդէն ծածկեցան ծառքն երիտասարդօք, և 'ի գիշերի կոտորեցին զամենայն զողեանն, և թաղեցին զգլխակունսն ընդ անարդիլ ապառաժ կոչկոռով, խաչ երկաթի կանգնեալ 'ի վերայ։ Հարցի զիշխանն՝ թէ ո՞չ զանգիտիցէ 'ի նոր յարձակմանց. ծիծաղեցաւ, և եցոյց զապառաժն՝ ասելով, Գոյ տակաւին տեղի բաւական ընդ դոլաւ։

Ի հիւսիսային արևմտեան կողման քաղաքին զննեաց ուղևորն՝ զհուն հեղեղաց լերանց բացեալ 'ի քարաժայռս, յորս քարինք հաստավիրգք կոծկոծեալք և ծակոտեալք անցս տան ջուրց, մերթ պաղպաջուն դարահոս սահանօք, մերթ նուրբ և անձուկ երակաւ, որ երգաձայն իմն կարկաջանօք քծնի ընդ մամռապատ քարինսն. յատակ անդընդոցն՝ պտոյտ ածէ խելաց և քաջապնդաց անգամ. և զարմանամ, ասէ ուղևորն՝ յանձին իմում, թէ զիարդ գիշերայն յայնգունակ վայրս յածեցաք, և ոչ բազում անգամ ջախջախեցան պարանոցք մեր։ Յափունս գետոյն փայտաշէն լոգարանք են կանանց՝ բացօթեայք. և ոչ ոք՝ ասէր իշխանն, չար ինչ ածէ զմտաւ, զի են կանայք և քորք և դստերք մեր։

Համբոյրս բարուք և բարեբնոյթս ծանեաւ ուղևորն զԶեթունցիս. չէր նոցա երբեք սպանեալ զոք առ 'ի գողա-

[1] Je regrette de ne pouvoir donner qu'une bien pâle idée de notre réception. J'entends encore à l'heure qu'il est l'écho de la montagne, reproduisant les coups de feu tirés en notre honneur avec un roulement semblable à celui du tonnerre : mon seul regret, avant de m'endormir, est de ne pouvoir dessiner quelques-uns des sites qui nous ont charmés.

[2] Տես զոր ասացաւ 'ի վեր անդր՝ յէջ 187։

գրեալ կամ ընթերցեալ առ Մատթ. Ուռհայեցւոյ, (յորում զամս վաթսունևհինգ խոտաճարակ ճգնութեամբ եկեաց՝ հանգուցեալն 'ի Կաստաղօն՝ Մարկոս Հոյ կամ ասորի, որ « աղօթիւք իւրովք յերկուս տեղիս ջուր եհան » յայնմ սահմանին ». և մարգարէացաւ ևս, ասեն, յետ առման Երուսաղեմի 'ի Խաչակրաց, եթէ դարձեալ մատնեսցի 'ի ձեռս այլազգեաց): Եւ զի պատմիչն Ուռհայեցի՝ 'ի Կոկաց գաւառի և մերձ 'ի Մարաշ ասէ զտեղին, աներկբայ է ընդ մէջ երկոցուն լինել, ուր է և Զէթուն, և յայսմանէ հաւանելի լինի և սորա լինել 'ի Կոկաց գաւառի: Ի Նորագիծ քարտիսի միում նշանակի առանց անուան լեառն մի բարձրաբերձ յՆ. Հր. Կոկիսոնի՝ երկուք կամ երիւք փարսախօք հեռի, և 'ի հիւսիսոյ Կանչոյ. թերևս սա իցէ Կոնկռնառ, ուղիղ յարևմտից՝ այլ ոչ սակաւ հեռի 'ի Զէթունէ: Վասն մերձաձայնութեան ինչ անուանն և վասն անյայտութեան տեղւոյն՝ յիշեալ լիցի աստանօր և Լոնգինակ (Longinach) քաղաք կամ բերդաւան, յորում տիրէր երբեմն Բեռնարդ փռանկ Օտարականն մականուանեալ (Extraneus)[1]: Զայս տեղի՝ մի 'ի քաղաքաց Կիլիկիոյ ցուցանէ և Աննա Կոմնենա յԱլեքսիատն, Լոնգինիաս անուանելով (Λογγινιαδα), զոր ընդ Տարսոնի, Ադանայ և Մսսոյ՝ նուաճեաց ասէ Մոնաստր՝ զօրավար Ալեքսի հօր իւրոյ, յամի 1104: — Մերձ է 'ի Զէթուն և 'ի Մ. Հս. Սօղախ լեառն, յորում քարայր մի մեծ և պաղանձաւք 'ի ջուրցն ծորմանց: — Ըստ լերանցն և այլևայլ վտակօք ջուրց պատեալ է քաղաքաւանն. որպիսի է Սեւ ջուր՝ իջեալ 'ի Սաղտալը լեռնէ, յորոյ վերայ արկեալ են կամուրջք կոչեցեալք՝ Սեւ աղբիւր, Զուխուր, Գասրս քէչիչ, Աղբիւրով՝ մերձ 'ի Զեթուն. Աղաձարկի ջուրն, զոր ժողովէ գետակն իջեալ 'ի Պրիտ լեռնէ, և ունի կամուրջ Ղարսի կոչեցեալ՝ 'ի սահմանս այգեստանեայց աւանին. են այլ ևս կամուրջք երկուստեք աւանին, յորս մեծամեծ խաչք են ագուցեալք երկաթիք՝ 'ի պահպանութիւն նորին:

Թէ և 'ի բարձրաւանդակի լերին կայ Զէթուն, այլ 'ի մէջի գոլով վերահայեաց զագաթանց՝ ձորանիստ երևի յ'3500'. և ընդարձակի իսկ փոքր մի ձորն 'ի բաւականութիւն բերելոյ այգիս անգամ և թզենիս և բամբակ, գուշակք բարեխառնութեան կլիմային և բարգաւաճանաց տեղւոյն. զորոյ զգիրս և զբերս այսպէս ստորագրէ բնիկն Կարապետ կաթողիկոս՝ յամի 1727, Քաղաքագիւղ անուանելով զայն. « Որ չինեալ կայ 'ի մէջ երից մերձա֊
» կայ լերանց, Պարզնկոյ, Ալրածոյ և Կանկառոյ, ընդ֊
» գոգացեալ ներ ձորում բարեբերի, ուր լինի այգի, ձի֊
»՝ թենի, նռենի, թզենի, և այլն, և ամենայն ըստ կար֊
» գի, այլ և բամպակ և մետաքս՝ որ է ապրշում. և հանք
» երկաթի. որ ըմպէ զջուր բարեհամ կարկաջուն փոքր
» գետոյն՝ որ հոսի 'ի լեռնէն Պրիտոյ, որ Թարգմանի
» ցուրտ, վասն մշտագիւտ ձեանն որ 'ի նմա: Ասացեալս
» գեօղ ունի յարևելս՝ առ ոտս Պարզնկոյ լերին՝ զառա֊
» քելաշէն վանս զՍուրբ Աստուածածնի. և այլ յառաջ
» դէպ 'ի հարաւ՝ զդաշտն արգաւանդ, որ ունի զմըշկա֊
» բար ջուրն Ջիրմկոյ, և զգանձելի եկեղեցին Ամենա֊
» փրկչին »: — Աներկբայ նշանաւոր բերք բնութեան երկրին՝ է Երկաթն, որոյ գլխաւոր հանք, որպէս 'ի վերդ յիշեցաք, են 'ի Պրիտ, ուստի հանեալ՝ կռուեն նախ 'ի ստորոտ Սաղտալը լերին, և անտուստ յաչնայնի բերեն 'ի հալոցս և 'ի գործարանս իւրեանց. վասն այնորիկ տեղին այն տաճկիւ կոչի (Թափոց, տեղի թափելոյ): Այս մետաղ 'ի վաղուց հետէ առիթ է վաստակոյ, պարէնի, ժրութեան և չափաւոր ազատութեան՝ բնակչաց երկրին. որք ոչ միայն 'ի վաճառ հանէին զայն, այլ և 'ի կազմութիւն զինուց իւրեանց, 'ի տղայ տիոց վարժելով 'ի շարժել և 'ի կրել՝ ցաւագոյթ հասակի, և 'ի լինել հարկի կռուոյ կամ պաշտպանութեան՝ 'ի հնգետասանամենից ցվաթսնամեայս՝ զինուորելով. բազում անգամ ընդ մեր֊



44. Զէթունցի.

ձարնակ այլազգենիկսն մաքառելով, և երբեմն միաբանեալ ընդ նոսին՝ ընդդէմ հարստահարու կողմնակալաց, որոց սակաւ ինչ երբեմն հարկէին, և երբեմն ոչ, և մերթ իշխեցողին Քօզան լերանց, այն որ յայսմ դարու զօրացեալ բռնացեալ էր և այլոց շուրջ վիճակացն, Հաճնոյ և Սսոյ, փոխանակ Օսմանեան Դրանն՝ յինքն կորզելով զսակ հարկին. իսկ սոքա մտադիւր տային ում և ազատութեան իւրեանց թուէր ճահագոյն:

71. Ոչ է մեզ յայտ ծագումն անուան Զէթունի, զի այսպէս գրի 'ի գիրս, իսկ այժմ 'ի հասարակ սովորութենէ Զէյթուն լսի. և ոչ հաւանիմք 'ի ձիթենւոյ ընծայել, և ոչ հաւատեմք 'ի Ծայթունեաց. անծանօթ և սկիզբն ազատակեաց հասարակութեան սոցին և անցք անցից յառա֊

1 Ալպերդ Aqui, Պատմ. Խաչակրաց:

ջին դարս. հակառակ իմն բաղդի այլոց գաւառաց մերոց, որոց հին բարգաւաճանք և անցք եղելութեանց ծանօթք են 'ի գրոց, և վերջին անյայտացեալ 'ի խրթնութեան. իսկ սոցա սկիզբն անյայտ և ներկայս եկեալ 'ի յայտնութիւն։ Հաւանութեան է, և գրեթէ և պատմական իսկ, զի և յետ բարձման թագաւորութեան Ռուբինեայց, յ'ամրագոյն լեռնակողմանքս տևեցին տակաւին բռնդատեարք ոմանք, որպէս յամուրս կողմանց Դրանցն Կիլիկիոյ, և յաւէտ յայս սահմանս Կապանոյ։ Յիշատակագիր ումն[1] դարու միով յետ զրաւման հարստութեան Հայոց, գրէ զինքն լինել 'ի զարմէ Հեթմոյ վերջին սպարապետի Հայոց, որոյ և յետ գերութեան Լևոնի պատերազմեալ էր ընդ Եգիպտացիս, և այրասիրտ կնոջ նորա Զարմանուհւոյ ձերբակալ արարեալ զորդի սուլտանին, զոր Գրիգոր ումն մատնիչ արձակեաց՝ սպանեալ զՀեթում. յորմէ զանգիտեալ Զարմանուհւոյ՝ «փախեաւ 'ի »լերինս Կոկիսոնի և Ուլնիոյ, և անդ թափառէր ամս »հինգ. յետ հինգ ամաց ժողովեալ 'ի լեռնականաց արս »երեքհարիւր, էառ ընդ որդւոյ իւրում (Գէորգայ) զԿապան, և ազատեաց զազգն 'ի ձեռաց այլազգեաց, ամս »վաթսունևհինգ։ Զքաջութիւնս սորա և զառն իւրոյ »Հեթմոյ և զորդւոցն իւրոց՝ գրեալ են 'ի գիրս յիշատակարանի վանաց Սրբոյն Կարապետի, և 'ի վանս Ս. »Ստեփանոսի որ 'ի Կանչու, և 'ի վանս Ֆռնըզու. և »զամենայն անցսն և զպատերազմունսն և զերկրաշարժըն մեծ և զսովն մեծ և զմահտարաժամն մեծ»։ Գրող յիշատակարանիս՝ «իջեալ 'ի Հեթմոյ և 'ի Զարմանայ», որպէս ասէ, Կիրակոս ումն է վարդապետ, յամի 1473, եղբայր Տեառն Յովհաննու երիցու Կանչուի՝ հօր Հեթմոյ և Լևոնի. յորոց զարմէ էին՝ և նորոգող գրոցն, յամի 1557, Ղուկաս վարդապետ վանահայր Զէթունի կամ Ս. Կարապետի, և եղբայր նորա Մատթէոս քահանայ՝ հայր Սարգսի և Լևոնի։ — Արժան է հետազօտել 'ի յիշեալ վանորայսն զյիշատակարանս գրոց և զկոնդակս եկեղեցեաց, յորոց մարթ է արտահանել կարևոր ծանօթութիւնս զանծանօթացեալ դիպաց և անձանց տոհմայինս պատմութեան. յիշեալս աստէն՝ առաջին ծանօթութիւն է իմ զտեղեացս և զքաղաքաւանէս՝ զորմէ բուռն հարեալս է ստորագրել։

Բայց է և նախնագոյն և սրբագոյն ամենայն յիշատակաց կողմանցս. նահատակութիւն Ս. Ստեփանոսի Ուլնեցւոյ, և մօրն և ընկերաց՝ երեսունևվեց անձանց, միաբանելոց յայլևայլ սահմանաց, և չատից 'ի Կոկիսոնէ, ուր և ծնողք Սրբոյն՝ Ղազար և Մարիամ՝ կէին գաղթեալք յԱնտիոքայ, և ինքն անդ ծնեալ էր և սնեալ. և 'ի ժամանակի հալածանաց Յուլիանոսի՝ 'ի գալ անդր Սոկրատայ դատաւորի՝ խոյս ետուն հաւատացեալքն և եկին 'ի լեռնակողմանքս. աստ Ստեփանոս կամ մի ումն յընկերացն Սոմնաս անուն՝ երթայր 'ի լեառն մի հովտաձև տափարակ, կամ «'ի լերինն հովտաձև 'ի տափարա»կըն», ժողովել կանկարս վայրիս, (յորմէ մարթ է գուշակել ինչ զբնութենէ և զբարձրութենէ երկրին). անդ ըմբռնեալք մատնութեամբ հովուի միոյ՝ վարեցան յատեան դատաւորի, որ 'ի Կոկիսոնէ եկեալ էր 'ի բերդն՝ «որ այժմ կոչի Կանչի», ասելով՝ հին վկայաբանին կամ մերազնոյն Գրիգորի, գտեալ 'ի Կ. Պօլիս 'ի յոյն լեզու և թարգմանեալ 'ի ԺԱ կամ 'ի ԺԲ դարու[2], ցուցանէ զի առ Յոյնս կամ 'ի հնումն՝ այլով անուամբ կոչէր տեղին։ Անդ դատեալ Սրբոցն, մայրն և կուսանքն նահատակեցան «հանդէպ ձորակի միոյ առ ստորոտով լե»րինն». իսկ վասն Ս. Ստեփանոսի և ընկերացն պատուիրէր դատաւորն Սոկրատ, «Տարջիք 'ի հեղեղատն և »սպանջիք զնոսա ...։ Հասին 'ի տեղի կատարմանն՝ 'ի »խորագոյն ձորակի միջի, հանդէպ կուսանացն կատարելոց, հեռագոյն սակաւիկ մի». և հրով փորձեալ և անկէզ մնացեալ՝ կատարեցան սրով. զորոց մարմինս ժողովեալ հաւատացելոցն՝ շինէին առ տեղեաւքն երիս եկեղեցիս, զմին 'ի վերայ սրբոց կուսանացն՝ որ կոչի Սուրբ Կաթողիկէ, զմիւսն 'ի վերայ արանց՝ ընկերաց սրբոյն Ստեփանոսի, և զմիւս 'ի վերայ սորին նշխարաց՝ որ և կոչի Ս. Ստեփանոս, «հանդէպ աղբերն զոր բղխեաց »'ի պէտս բժշկութեան, որ կայ մինչև ցայսօր, և է պատճառ շինութեան տեղւոյն»։ Քանզի հայր Սրբոյն յառաջագոյն փոխեալ և թաղեալ էր (ըստ ոմանց յԱստուածաշէն լերին՝ յարևմտից Կապանայ), զատ յերկոցուն սոցա է համար «Երից տասանց և չորից ընտրելոց »'ի Տէր», զորս տօնէ եկեղեցիս մեր առանձինն շարականաւ ներբողելով. յորմէ և յայտ է թէ 'ի վաղուց հաստատեալ էր պաշտօն Սրբոցն, որք հանդերձ տեղեաւ նահատակութեանն ընդ հայկականս գրէին. զայս հաստատէ և յետին տուն շարականին. «Ցնծութիւն եկե»ղեցւոյ ընտրեցար 'ի Հոգւոյն, և լուսաւորեցեր զորդիս »Թորգոմայ. այսօր բերկրին հաւատացեալք և տօնեն »զձգնութեան քո զհանդէս. աղաչեա զԱստուած շնոր»հել մեզ զկեանս անվախճան»։ Արդարև խնդալի է ցարդ յայնպիսում առապար և զանխուլ վայրի՝ զաւանդըն սրբազան պահել քաջարանուկ և քաջահաւատ որդւոցն Թորգոմայ, 'ի միջի այլազգենից և այլալեզու որդւոց Թիւրքմէնից. թէպէտ և սոքա իսկ պատուեն զտեղին և զցրտաբուղխ աղբիւրն, ուր ուխտ մեծ կատարի յաւուրս Յինանց։ Ո՛ գիտէ թէ և մեծին Ոսկիբերանի չիցէ յաջողեալ 'ի ժամանակի աքսորանաց իւրոց 'ի Կոկիսոն՝ գալ յուխտ Սրբոյն՝ որդւոյ հայրենակցի իւրոյ (Ղազարայ Անտիոքացւոյ), տղայ գոլով ինքն յաւուրս նահատակութեան նորին։ Երաշխաւոր համարեցի կարծեացս՝ պատմութիւն վարուց մեծի հայրապետին՝ գրեալ յամի 1328, «'ի սուրբ և 'ի մեծափառ և 'ի հռչակաւոր »ուխտս Ս. Ստեփանոսի Ուլնեցոյն և երեսուն և չորս »ընկերացն իւրոց». որպէս ասէ գրիչն (Ստեփան), յիշելով և զառաջնորդ և վերատեսուչ «սուրբ և քաջամար»տիկ վկայիցս» զհայր Թորոս, զփակակալն Կոստանդին, զտնտեսն Բարսեղ, և միաբանս յանուանէ տասնևչափ։ Ոչ յայսմ յիշատակարանի, ոչ 'ի վկայաբանութեան անդ 'ի հնումն և ոչ 'ի հետևողս նորին 'ի Յայսմաւուրս՝

[1] Այսօրինակ ըստ յիշատակարանի Շարականի միոյ 'ի վանս Զէթունի, հրատարակեալ 'ի Մանզումէի Էֆքեար լրագրի, (1870, թիւ 1116). բայց ստուգութիւնն ոչ թուի իսպառ աներկբայ, որպէս և ոչ քերականական շարագրութիւն լեզուին։

[2] Ճառընտիրն՝ յորում ընթեռնումք զվկայաբանութիւնս այս՝ գրեալ է հնաձև տառիւք և թուի գործ ԺԲ դարու։

գտանի անուն Ուլնիոյ կամ Ուլնի, որպէս համարի կոչիլ տեղւոյ Նահատակութեան Սրբոցս, որ յայժմուս՝ ըստ ոմանց է Հին Ֆրնուզ, ըստ այլոց՝ Զէյթուն. այլ զինչ պատճառ հին կոչման և ծագումն նորոյս, կամ թէ ճըշգրիտ նոյն երկոքին, և անընդմէջ մնա՝ թէ սակաւ մի հեռագոյն իցեն տեղիք Նահատակութեան նոցին, ոչ ունիմ հաւաստել աներկբայապէս։

Ցետ նախայիշեալ պատմական յիշատակի ԺԵ դարու, այն է Զարմանուհւոյ ապաստանելոյ 'ի լերինս Ուլնիոյ, առաջին յիշատակ Զէթուն անուամբ ծանօթանայ ինձ յելս կոյս ԺԶ դարու, յորում յիշի եպիսկոպոս տեղւոյն, մի յերից կամ չորից ստորագրողաց թղթոյ վկայութեան առ Գրիգոր ԺԳ Պապ՝ յամի 1586, վասն ընտրութեան Ազարիայ վարդապետի 'ի յաջորդութիւն Խաչատրոյ կաթողիկոսի Սսոյ։ Ցետ տասն ամաց (1596) գտանեմ գիրս մի Ջեռնադրութեան գրեալ վասն Ցակոբայ եպիսկոպոսի « 'ի Զէթունոյ վանքն 'ի Սուրբ Աստուածածնի դուռն, » յառաջնորդութեան Տէր Ծերուն արհիեպիսկոպոսին », որպէս ցուցցէ նօտրաձև գրեալ պատճէն յիշատակարանին։ Զվանքս զայս և զառաջնորդարան Ուլնիոյ՝ որ կայ 'ի ստորոտս Պարզընկայ լերին, Կարապետ կաթողիկոս առաքելաշէն կոչէ, նշանակ քաջ հնութեան, զորոյ ցանկալի էր ունել հաւաստիս 'ի կոնդակաց աթոռոյն՝ եթէ գուցեն։ — Ցելս ԺԶ դարու և 'ի սկիզբն ԺԷ^ռ^ յիշի բազում անգամ Վահան երէց ոմն Զէթունցի քաջ քարտուղար, որում բազումք աշակերտեալ են, որպէս Ցակոբիկ դպիր՝ որ և էր « 'ի գիւղաքաղաքէն Զէթունայ », և գըտնացեալ 'ի Սեբաստիա՝ օտարութեամբ և տրտմութեամբ ընդօրինակէր գիրս ինչ, և երախտեօք յիշէ զուսուցիչս իւր, և « զհամշիրակ և զհաւնոէզկէճ գրչութեան զեղ» բայրն՝ զԱլեքսիանոս դպիրն »։ Նոյն դարձեալ գրէ անդ և յամի 1608, յիշելով զնոյն ուսուցիչսն, և թէ « ղարիպ » էի և սրտիկս տրտում ... ոչ ոք 'ի մարդկանէ 'ի վրայս » խնամք չտարան, հանապազ լայի և տարակուսեալ էի. » բայց հէմշէհրին իմ Զէթունցի մղտեսի Առաքելն՝ (սար» կաւագ) որ էր վաճառական, նա տանէր զիս իւր օտայն » և մխիթարէր մարմնաւոր կերակրօք և ըմպելեօք, և » ասէր. Եղբայր, մի հոգս, ես հանեմ զքեզ այս դառն » և դժար աշխարհէս[1] »։ — Նոյն ինքն Վահան գրէ յամի 1625, « 'ի գիւղաքաղաքս 'ի Զէթուն, ընդ հովանեաւ » սրբոյն Սարգսի Զօրավարին և այլ ամենայն սուրբ տա» ճարացս և սրբութեանց ... 'ի յառաջնորդութեան յայս » մեր գաւառիս Տէր Մկրտիչ արքեպիսկոպոսի և Տէր » Վարդան եպիսկոպոսի և Խաչատուր վարդապետի, և



45. Ջեռնադրութեան գիրք գրեալ 'ի Զէթուն յամի 1596.

1 Քանզի ասէ. « Լսէի զխեղճ ձայն քաղաքին մերոյ Գերմանիկէ, որ է Մարաշ, որ էր սով և սուղ. վեց դրեմ հացն 'ի փարա մի, և էր որդիքս իմ անդ, ոչ եկող կայր և ոչ գնացող։ Այսպիսի տառապանօք գրեցի զՇարակնոցս, 'ի լաւ և յընտիր օրինակէ », և այլն։

» այլ ամենայն եղբարցն որ սպասաւորեն սուրբ ուխտիս » մերոյ » . յիշէ զհայրն Աւետիս, զմայրն Զմրուխտ, զեղբարսն՝ Տէր Ներսէս եպիսկոպոս և Տէր Ստեփանոս և Կոստանդին ։ — Այլ աշակերտ Վահանայ Յովհաննէս անուն՝ գրեալ է յամի 1629 ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի և Ս. Գրիգորի շարական մի վասն Տէր Ռստակէս քահանայի, յառաջնորդութեան գաւառին Տ. Մկրտչի։ Նոյն և յամի 1634 գրէ անդ ժամագիրս վասն Պետրոսի աբեղայի, յիշելով ընդ բազում ազգականաց նորին՝ զանմոռանալի ուսուցիչն « զՏէր Վահան քաջ քարտուղարն ». և 'ի միւսում ամի 1635, գրեալ է անդ Սաղմոս փոքրիկ[1]։ — Ցայլում մատենի գրելոյ 'ի նմին ամի և յառաջնորդութեան վանացն նոյն Մկրտիչ արքեպիսկոպոսի, յիշին ութ եկեղեցիք Զէթունի. Ս. Սարգիս Զօրավար, Ս. Հրեշտակապետք, Ս. Յակոբ Մծբնայ, Ս. Աստուածածին, Ս. Կարապետ, Ս. Գրիգոր Լուսաւորիչ և Պարսամ և Թէոդորոս։ Ցայլում մատենի գրելոյ յամի 1666 վասն Տէր Կարապետ քահանայի որդւոյ Տեառն Պետրոսի՝ յիշին նոյնք. այլ և Թորոս քահանայ, և որդի նորա Գասպար գրիչ, Աճամ Ոսկան որդի Աստուածատրոյ, Իբրիմ սարկաւագ, և այլն. Յովհաննէս Գրչապետ ուսուցիչ գրողին՝ Յովհաննու որդւոյ Նոյ երիցու և Մարգարտի, Ստեփանոս վարդապետն, և այլն. ընդ որս և առաջնորդ վանացն Տէր Մովսէս աստուածաբան վարդապետ։ Ցիշեալդ Ստեփանոս վարդապետ թոռն կոչեցեալն Սաչու, այն որ ընտրեցաւ յեպիսկոպոսութիւն Գաղատիոյ իբր յամի 1677, և հովուեալ ամս վեշտասան կամ ութևտասն՝ հրաժարեցաւ (1694), փափագելով առանձնանալ յԱստուած և 'ի հայրենիսն, ուր և հանգեաւ յետ սակաւ ամաց (1697) 'ի վանս Ս. Աստուածածնի, փոխանակ իւր կարգելով յաթոռն Անկիւրիոյ զհայրենակից իւր՝ զանուանին Կարապետ վարդապետ՝ յետոյ կաթողիկոս Էջմիածնի։ — Սա՝ որպէս պատմէ յերկարագոյն զանձնէն՝ 'ի յիշատակարանի անդ Աստուածաշունչ գրոցն, ծնեալ էր 'ի Զէթուն յամի 1661, 'ի Մարտիրոսէ Ցահուկ կոչեցելոյ և 'ի Մարեմայ, « եօթնամենի » ծնեալ, ասէ, և եօթն ամ զկաթն առեալ 'ի մօրէս, » յաղագս որոյ Ծըծկեր եմ մականուանեցեալ » . յետ մահուան ծնողացն լուեալ զեպիսկոպոսանալ հայրենակցին իւրոյ՝ յաթոռ Գաղատիոյ, գնաց առ նա, և վարժեալ ընդ ձեռամբ նորին՝ էառ 'ի նմանէ զկարգ քահանայութեան (1681), և զգաւազան վարդապետութեան (1684 և 1687), և բազում սպաս հարեալ նմա 'ի նորոգութիւն վանացն և 'ի նուիրակութիւնս, առաքեցաւ առ Նահապետ կաթողիկոս առնուլ զօծումն եպիսկոպոսութեան և լինել յաջորդ տեղւոյն, զորոյ և կալաւ զաթոռն աւելի քան զերեսուն ամ (1694–1726). և էր « այր շքեղ և » փառազարդեալ » , ըստ ասելոյ Ղազարայ Ջահկեցւոյ։ Ցերկար ամս աթոռակալութեանն բազում շինութիւնս և նորոգութիւնս արար յեկեղեցիս և 'ի վանս Գաղատիոյ, ճոխացուցեալ սպասիւք և գրենով. զորս և ցանկեալ աւանդեաց ձեռնասուն աշակերտի իւրոյ Մովսիսի վարդապետի. ընդ որում յամի 1705 գնաց յուխտ յԵրուսաղէմ, 'ի Հռոմկլայ, և 'ի հայրենիս իւր, ուր և եկաց ամիսս չորս, վասն չփոթից ժամանակին և երկիւղի ճանապարհաց՝ յերեսաց ապստամբաց, և 'ի տեսութիւն եղբօր իւրոյ Ստեփանոսի երիցու։ Գրէ և ընկեր իւր և յաջորդ Մովսէս վարդապետ, թէ « Անդ ('ի Զէթուն) զուխտս » մեր կատարեցաք, թէ 'ի Ս. փրկիչն, թէ 'ի Սուրբ Աստուածածնայ վանքն, և թէ յԱնանիա առաքելոյն սուրբ » այն, որ 'ի Զէյթունոյ վանքն կայ, և ուսուցչին մերոյ » գերեզմանն (Ստեփաննոս եպիսկոպոսի) . և անդէն » զտեղի կալաք աւուրս հարիւր և քսան, յահէ Թորգոմանց, որ իբրև զառիւծ շրջէին շուրջ զմեօք. բայց յետոյ փախստեայ ճանապարհաւ հազիւ հասաք 'ի Հաճնայ վանքն, առ Ովաննէս կաթողիկոսն » ։ Ցետ այլոց ևս շինութեանց՝ 'ի վախճանել Աստուածատրոյ կաթողիկոսի՝ ընտրեցաւ Ուլնեցիս Կարապետ 'ի Կ. Պօլիս, և արքունի հրովարտակաւ գնաց յԷջմիածին (1726), և կալեալ զգահն ամս հինգ՝ վախճանեցաւ յամի 1730։ Խօսելով զհայրենեացն 'ի յիշատակարանի Ս. Գրոցն՝ ասէ, « Լեալ » նախագոյն ճոխ և փարթամ. արդ վասն մեղաց մերոց » նուաստացեալ և աղքատ. բայց ունի տակաւին զեօթանեսին եկեղեցիս, որոց մեծագոյնն է Սուրբ Աստուածածինն » , որիչ 'ի համանուն վանացն։ Ցիշէ նա և զՅովհաննէս վարդապետ հայրենակից իւր, զայր ճգնող և պահեցող, որ ամս երեսուն օգնական եղև ինքեան 'ի Գաղատիա, և յամի ընտրութեան իւրոյ 'ի կաթողիկոսութիւն վախճանեալ՝ եթող բազում սպաս և մատեանս յաթոռն Անկիւրիոյ։ — Ընծայեցան յՈւլնիոյ և յաթոռ Սսոյ՝ կաթողիկոսունք, յորոց ծանօթք Սիմէոն (1539), և յաջորդ նորա Ղազար (1545), Խաչատուր Բ մականուանեալն Երաժիշտ (1560–1584)։ — Առաջնորդք այսինքն եպիսկոպոսք կամ արքեպիսկոպոսք Զէթունի նստեալք 'ի վանս Ս. Աստուածածնի, ոչ գիտեմ յորմէ հետէ, կամ յոր անուն, ծանօթքն ինձ՝ հանդերձ վերոգրելովքդ, են,

| | | | |
|---|---|---|---|
| 1586 | Յովհաննէս | 1821 | Պօղոս |
| 1596 | Ծերուն | 1823 | Յակոբ Պարմաղը-քէսիկ |
| 1625–34 | Մկրտիչ | 1826 | Մատաթիա |
| 1666 | Մովսէս | 1828 | Մարտիրոս |
| 1720 | Կարապետ | 1867 | Սարգիս[3] Գուլիկեան |
| 1800 | Յովհաննէս | | Գրիգոր Վ. Արարատեան |
| 1806 | Յարութիւն | | Սահակ Վ. Քէօչէկեան |
| 1808 | Միքայէլ | | Ստեփան Վ. Աղճապէկեան |
| 1817 | Յակոբ Պօստանեան[2] | 1883 | Կարապետ եպիսկոպոս. |

1 « Գրեցաւ սա 'ի մեծ թվին Հայոց ՌՁԴ, 'ի յերկիրս Գերմանիկոյ, 'ի գիւղաքաղաքս 'ի Զէթուն, ընդ հովանեաւ Սրբոյ Լուսաւորչին, և Մօրն Լուսոյ Ս. Աստուածածնին, և այլ Սրբոցս՝ որ աստ կան 'ի յօգնութիւն Հայոց տոհմին »։

2 Ըստ այլոց՝ յառաջ քան զսա եկաց այլ ոմն Յակոբ՝ Պըշտեան մականուանեալ. իսկ յետ նորա (Պօստանճեանին) մի ըստ միոջէ կացին յառաջնորդութեան եպիսկոպոսք և վարդապետք այսոքիկ.

Յովհաննէս Զարաանճացի
Յարութիւն Վ. Տէրդաւլթեան
Սարգիս եպիսկոպոս Խանդքարեան
Յովհաննէս եպիսկոպոս Էօքսիւզեան
Սարգիս եպիսկոպոս Գուլիկեան, և այլն։

3 Սա առ ծերութեան հրաժարեալ՝ նստէր 'ի վանսն, և կենդանի էր 'ի ժամանակի գրութեանս, յամի 1882։

Ի թիւ եկեղեցեաց քաղաքաւանին յաւելեալ է և Ս. Պետրոս և Պօղոս. զՍ. Յակոբ նորոգ շինեալ են քարուկիր, և 'ի պեղելն յայտնեալ է գերեզման Գաբրիէլի ուրումն ճգնաւորի շինողի հին եկեղեցւոյն՝ որ կէս փայտակերտ էր։ Ի փոքրիկ եկեղեցւոջ Ս. Յովհաննու պահի մեծ պաշտպանակն Զէթունի՝ աւետարան մի, Վլասի աւետարան կոչեցեալ, ոչ գիտեմ ե՛րբ գրեալ և յո՛ր Վլասի անուն, Գողո՞ն թէ այլոյ. յոր երդնուլն վաւերագոյն համարի, և զօրութիւն մեծ՝ 'ի վտանգս և 'ի գործ պատերազմի։ — Արտաքոյ և հեռի 'ի քաղաքաւանէն ժամու և կիսով ևս յԱստուածածնի վանից՝ 'ի հարաւոյ արևելից՝ յանուանեալ Իլիճէ հովտին, ուր ջերմուկք են, կայ և հոյակապ վանքն Ս. Փրկիչ կամ Ամենափրկիչ, յորոյ 'ի ներքուստ սեղանոյն բղխէ աղբիւր ցուրտ ջրոյ և ժողովի յաւազանս առ դրան տաճարին. ըստ աւանդութեան տեղացեաց՝ Բարդողիմեայ առաքելոյ հիմնեալ է զեկեղեցին և զջուրն բղխեցուցեալ։ Իբրև քառորդաւ ժամու հեռի 'ի վանացս՝ 'ի կողմն քաղաքաւանին Զէթունի կայ մատուռն մի ուխտատեղի Ս. Կատարինէ կոչեցեալ, զոր և ասեն լինել մի յընկերաց Ս. Ուլնեցւոյն. թերևս տեղի նահատակութեան կուսանացն իցէ։ — Գոն և ուխտատեղիք ուրեք ուրեք, որպէս Ս. Եղիա կոչեցեալ գերեզման 'ի լերին, ժամաւ հեռի 'ի վանացս. յայլում լերին՝ մերձ 'ի քաղաքաւանն՝ Մինակեցնոց՝ տեղի ճգնութեան ուրուք։ — Մատուռն մի ևս է ընդ մէջ Ղարսի կամրջին և այգեաց Զէթունի, Ս. Յակոբ կոչեցեալ, որ էր ասեն կօշկակար Մարաշցի, դարու միով յառաջ, և խեղդամահ եղև վասն հաւատոյն յԻպլիչայ ումեմնէ ոստիկանէ։

72. Այսքան բազմաթիւ եկեղեցիք, սրբութիւնք և վանորայք, և մատեանք գրեալք 'ի նոսին, հաստատեն զկայութիւն Ուլնեցւոյ կաթողիկոսին, եթէ արդարև բարգաւաճ լեալ է երբեմն Զէթուն, և ոչ լոկ շահավաճառութեամբ, այլ և մտաւոր և կրօնական արգասեօք, և ոչ՝ (որպէս այժմեան կարծիս գրաւէ զմիտս) միայն 'ի կրթանս բազկաց և զինուց պարապէր կորովի գրոհն այն, ապաւէն կալեալ զամեհի բնութիւն առապար վայրացն. տևեալն իսկ հասարակութեանն ցմեր ժամանակս՝ հայրական օրինօք ներքին վարչութեան, առաջնորդութեամբ չորից իշխանաց 'ի քաղաքաւանին, և տեաչօք՝ (քեահեա) իւրաքանչիւր գեօղից յօդելոց 'ի նոյն, գերագահութեամբ եպիսկոպոսի իւրեանց 'ի խորհուրդս կարևորս, հաւաստիք են հայրենատուր աւանդից և հրահանգաց։ Բայց և հարկ է ասել, թէ 'ի յետին ժամանակս աճումն և հակառակութիւն Թուրքմէնից և Աֆշարաց՝ մերթ ընդ միմեանս և մերթ ընդ օսմանեան կուսակալս կողմանց Կիլիկիոյ և Մարաշոյ, և եւս այլոց անկիրթ տոհմից, որպէս և առ մեօք իսկ կովկասայնոց Չէրքէզից, պատերազմունք Եգիպտացւոց ընդ Դրանն, բռնանալ Քօզանեան եղբարց 'ի վերայ չուրջ սահմանացն, այս ամենայն վրդովեցին և պարտասեցուցին, այլ ոչ 'ի սպառ սրտաթափ արարին զՈւլնեցիս։ Ի հաշտութեան ժամանակի պայմանեալ էր, ոչ գիտեմ յորմէ՝ հետէ, հատուցանել Զէթունեաց՝ իբրև հարկ արքունի՝ 60.000 դահեկան, զոր՝ յապստամբելն, զլանային որպէս և յամի 1819, յորում իբրև համախոհ նոցին ամբաստանեալ լինէր Կիւրակոս կաթողիկոս՝ 'ի Կ. Պօլիս, և արդարանայր, և ոչ առնոյր յանձն ինքնին հատուցանել զհարկ նոցա 'ի Դուռն, զի ոչ վստահանայր 'ի հնազանդութիւն նոցին։ Ի ժամանակի պատերազմաց Իպրահիմայ՝ (1830-40) միաբան գտան լեռնականքն հակառակել նմա. և յետ այնր՝ 'ի յօրանալ և յոխորտալ Քօզանեանց՝ գիտացին չափաւոր զիջմամբ կալ 'ի կշիռ, մինչև ցմեծ և ծանօթ դիպուած 1862 ամին, որոյ՝ (ըստ օրինի ամենայն մերձաժամանակ այլ հեռավայր իրաց)՝ չեն քաջ ծանօթ պատճառքն և հանգամանք, պէսպէս համբաւեալք. զորոց չէ մեզ խոյզ և խնդիր առնել աստանօր, այլ համառօտիւ զհաւանականն կարծեալ՝ յիշել։ Ցամարայնի այնր ամի վէճ իմն և կռիւ յուզեալ յայլազգի բնակիչս Քէրմէճ կամ Քէրրմէճ կամ Քիւրտմէճ գեղջ՝ որ 'ի ստորոտս համանուն լերին, յարևելակողմն Զէթունի, իբրև եօթն մղոնաւ հեռի, վասն վարի և հնձոյ գետնի միոյ, ներգեւեալքն 'ի կռուին՝ օգնութիւն խնդրեն 'ի մերձաւոր Պէչէճ գեղջէ որ և Քիսիր. Քէրթմէնցիք թողեալ զընտանի կազըն՝ վանեն զօտարսն, հանդերձ արեան հեղմամբ. ընկրկեալ Պէչէնցեաց՝ յօգնութիւն և ինքեանք կարդան զՀայս մեծի Ալապաչ գեղջաւանի որ 'ի հարաւոյ Զէթունի. զգիր գեղջն Կարապետ և երկրորդ նորին Յակոբ առեալ սակաւաթիւ խումբ մի զինելոց՝ դիմեն խաղաղել զաղմուկն. այլ ընդդիմութիւն գտեալ 'ի Քէթմէնեաց՝ զինաշարժութիւն և մահունք լինին երկուստեք. անկանի և Յակոբ 'ի Հայոց կողմանէ, այլ յաղթականք սոքա լինին և վանեն, թերևս և աւերեն զարարս ինչ հակառակողացն. որոց ոչ կարելով այլազգ վրէժ խնդրել՝ գուժկան առաքեն առ կուսակալ Մարաշոյ, եթէ Հայք վայրապար կոտորեն զիսլամս. ընդ հակառակն Պէչէնցիք ևս պատգամաւոր առաքեալ՝ ջատագով կան Հայոց։ Բայց յառաջին համբաւոյն յուզեալ Իսլամաց և մանաւանդ գլխաւոր անուանեալ (պաշըպօզուգ) զօրականին՝ 'ի վրէժ բողոքեն. զիջեալ և կուսակալին (Ազիզ փաշայ), փութայ նուաճել զաղմուկն և զկարծեցեալ ապստամբութիւնն. 5 կամ 6000 ասեն զհետևող և զյառաջող ազատագլուխ հրոսուն, որք յայրեաց յաւեր դարձուցանեն զԱլապաչ, կոտորելով զանկեալսն 'ի բուռն, քանզի բազմութիւն բնակչացն խոյս տայր 'ի Զէթուն։ Խռովի քաղաքաւանն. փութան իշխանքն գումարել 'ի ժողով և 'ի զօրակոչ, և յամրութիւն սահմանաց՝ ընդդէմ հրոսուն, որ սպառնալեօք և աւերածութեամբ մերձենայ. յետ որոց և ինքն Ազիզ փաշայ՝ անցեալ ընդ Ջահան գետ, ընդ Զագըր-ոէրէ գիւղ (150 տամբք), աւերածելով, և ընդ Ալապաչ, ուր բռնութեամբ և պատերազմաւ վանեալ զգիւղականսն, և հրկէզ արարեալ ըղտունս, գումարի յԻլիճէ հովիտ՝ առ Ամենափրկչի մենաստանաւ, յորում միանձունք երեք կամ չորք և պառաւ մի սպասաւոր՝ խողխողին, թերևս յանգէտս զօրավարին, և չուն սպանեալ արկանի 'ի վերայ դիականց նոցին. աւերին և աղօրիք և դարբնոցք տեղւոյն։ Պատգամ առաքէ Ազիզ առ Զէթունցիս զինաթափ լինել, տալ պատանդս և տուգանս. իսկ նոցա կասկածեալ՝ չառնուլ յանձն, և զգուշանան անցիցն՝ յայտնի և գաղտնի պահպանութեամբ. և ապա 'ի խուռն յարձակել զօրականին

('ի 14 օգոստ.) հանդերձ հրետօք, զդէմ ունին և նոքա օգնութեամբ դարանակալացն. և ժամս չորս ոգորեալ՝ ընկրկին յարձակողքն, թողլով զբանակետղն և զհրանօթս, և ոգիս իբրև ութհարիւր, աւելի կամ պակաս, և շտապաւ դառնան 'ի Մարաշ. գործելով և զճանապարհայն նախճիրս, սպանեալ զաղօթական կրօնաւոր մի յԱստուածածնի վանս, և զայլս այլուր։ Մինչև 'ի նոր ինչ ձեռն արկեալ կուսակալին Մարաշոյ՝ հասանէ նմա հրաման հրաժարելոյ յիշխանութենէն, և փոխանակ նորա առաքի Աշիր փաշայ՝ հանդերձ հրահանգեալ զօրօք. գան և քննիչք՝ ստուգել զպատճառս աղմկին. և յետ երկարաձիգ բանագնացութեանց և դատից ստիպին իշխանք Զէյթունի երթալ 'ի Կ. Պօլիս, անուանեալքն Աստուածատուր Եէնիտիւնեան օղլու, Մարտիրոս կամ Նազարէթ Սուրենեան, Ղազար Շուր օղլու և Մկրտիչ Ցախրեան[1]։ Յետ բազում և յերկար քննութեանց և արգելմանց, և միջամտութեան եւս դեսպանաց օտար պետութեանց, և խնդրելոյ Ուլնեցեաց զպաշտպանութիւն նախագահի կամ պատրիարքի Հայոց կաթոլիկաց, արձակին արգելեալ իշխանքն, սահմանէ Պետութիւնն օսմանեան կարգել ինքնին տեսուչ Զէյթունի և հարկաժողով, ընդ վերագոյն իշխանութեամբ կուսակալին Մարաշոյ, որպէս և յառաջն։ — Ի նմին ժամանակի նուաճին իսպառ և Քօզանեանք, և կերպարանափոխ լինի վարչութիւն լեռնակողմանց Կիլիկիոյ։ Լինին դարձեալ շփոթք ինչ և յամի 1872, յոր սակս կալանաւորին ոչ սակաւք ումանք յՈւլնեցւոց, ընդ որս և Նիկողայոս եպիսկոպոս Ֆռնուսի 'ի Մարաշ, և անդրէն խաղաղին և հաստատին սահմանեալքն 'ի 1862-3 ամի։ Համարձակ լինի այնուհետև երթևեկ կողմանց լերանցն. ընդ քաղաքականին և կրօնականն, զի և հռովմէական դաւանութիւն մուտ գտանէ. և անուանեալն Միացեալ Ընկերութիւն Հայոց Կ. Պօլսի՝ հաստատէ վարժոցս մանկանց և աղջկանց 'ի Զէյթուն, յամի 1879։

Ի նախակարգեալ ցուցակիդ տեսանի թիւ բնակչաց Հայոց 'ի Զէյթուն քաղաքաւանի աւելի քան զ'17,000, որ պահանջէ իբրև 2000 տունս. այլ են որք ցարդ՝ որպէս և քառասուն ամօք յառաջ 1000 տուն միայն ասեն. այլք 1500, և ոմն 'ի մերայոց[2] յամի 1863 գրէր 5000 տունս. ըստ այսմ համարելի են և այլոց գեղջէից նշանակեալ թիւք։

* * *

73. Ի տեղագրելս զլեռնակողմանքս Ջահանայ և առանձինն զվիճակ Զէյթունի, որպէս և ծանուցի՝ չէր իմ հանդիպեալ եւրոպացի ուղևորի այցելուի և ծանօթատուի տեղւոյն. յետ այնորիկ և յաւարտ գործոյս՝ գտի զճանապարհագրութիւն փռանկի միոյ, որ առաջին՝ որպէս և ինքն ասէ, մուտ գտեալ է 'ի Զէյթուն յամի 1864, և եղեալ անդ զաւուրս երիս (27-9 յունիսի), միջնորդութեամբ Արարատեան Գրիգորի վարդապետի, որոյ սակաւուք յառաջ երթեալ 'ի Բարիզ և շնորհս գտեալ էր 'ի Նաբոլէոն Գ կայսերէ և յայլոց։ Ուղեգիրն՝ ոչ ուսումնական քննութեամբք՝ այլ ընտանօրէն իմն և խնամով պատմէ զոր ետես, և զընդունելութիւն զոր եգիտ 'ի Զէյթունեայց, զբարս նոցա և զճարտարութիւն, միանգամայն և զկերպարանս երկրին, ընդ որս հաւասար սքանչանայ. և մեր համարելով հաճոյանալ ընթերցանելեաց զգրեալս առաջին եւրոպացւոյ քննողի, առաջի արասցուք ըստ նորին բանից։

Սակաւ ընկերօք, սպասաւորօք և երկու զինապահօք զոր ետ նմա կուսակալն Մարաշոյ (ուստի անկաւն յուղի), և վեշտասանամեայ թարգման պատանեաւ որ գիտէր հայ և թուրք և արաբ, այլ և փռանկ և իտալացի լեզուս, էանց ուղևորն ընդ առապար լերինս անջրպետս Մարաշոյ և Զէյթունի. որովք յետ ժամուց ինչ՝ մինչդեռ նստեալ ընդ ստուար սօսեաւ 'ի ձորեզր հեղեղատի միոյ հանգչէր, երևեցան 'ի բարձրաւանդակում 'ի հանդիպոյն 12 զինեալք լեռնաբնակք, յորոց զինուց փայլատակունք հատանէին նշուլից արեգական. այլ զի ուս ընդ անութ ունէին զհրացանսն՝ ծանեան բարեկամս լինել և ոչ թշնամիս. որք և վաղվաղեալ իջեալ՝ ողջոյն մատուցին և հրաւէր 'ի դիմաց իշխանացն Զէյթունի, առաքեալք 'ի նոցանէ՝ ուղեկից լինել հիւրոցն, յորոց պատուեցան և ինքեանք։ Ամենեքին նոքա երիտասարդք էին, երիցագոյնն իսկ չէր աւելի քան քսանևհինգ ամաց, կայտառք, սիրունակք, քաջանշանք. մինչև զարմանալ՝ թէ զիարդ մարթ իցէ վնասիլ ումեք 'ի միջի այսպիսեաց՝ անպահապան գնալով[3]։ Եւ քանզի յոյժ համբաւեալք էին 'ի դիպաձիգ հրացանութիւն, փորձել կամելով ուղևորացս՝ եդին քար մի փոքրիկ 200 Զափ 'ի բացի, և խոստացան դահեկան մի (մէճիտիէ) դիպուցողին. ոչ ոք դիպոյց, այլ ամենեցուն եւս գնտակք կառեան զնպատակաւն. սակայն նշանաւոր երևեցաւ յեղանակ հրացանութեան Զէյթունեայց. զի կատուանման վերելակեալ 'ի ծառս՝ և յեցուցեալ զգործին յոստ մի՝ արձակէին բաւականաւոր ուղղութեամբ[4]։

« Զիք գեղեցիկ քան զերկիր նոցա. չոճիք մեծամեծք,
» սօսք ստուարաստեղունք, կաղնիք կանաչասաղարթք՝
» հաճոյարար հանգիստ ընծայեն աչաց. վտակք մանուա-
» ծաւալք, հեղեղք ուղխինահօսք, աղբերք ականակիտք
» և սառնորակք՝ շիջուցանեն զծարաւ, և ածեն 'ի կա-
» ծանսն՝ դալարութիւն յարակայ, նաև 'ի լափլիզող
» տապս արեգական »։

Հրացան զուսով և ձեռք 'ի նոսին՝ թափօրապէս յառաջ խաղային լեռնականքն. և հասեալք 'ի վտակ մի հզօր, բաց յերկուց գլխաւորացն՝ այլք մերկացեալ մխեցան 'ի

1 Զգլխաւոր իշխանացն Զէյթունի՝ խուրշեան անուանէ ճանապարհորդն փռանկ յամի 1864։

2 Պարտիզպանեանն։

3 Tous ces montagnards sont jeunes; le plus âgé ne dépasse pas vingt-cinq ans: tous ont l'air ouvert, aimable, distingué: nous avons peine à nous figurer qu'on risque quelque danger à passer au milieu d'eux sans escorte.

4 Ils grimpent comme des chats dans un arbre, se cachent dans le feuillage, appuient le canon de leur arme sur une branche et visent avec assez de précision. — Rien de plus beau que leur pays. Grands pins, platanes énormes, chênes verts reposent délicieusement les yeux: ruisseaux qui serpentent, torrents qui se précipitent, sources limpides et glacées étanchent le soif et maintiennent les défilés dans un état de verdure permanent, malgré l'ardeur dévorante du soleil.

ջուրն, մրցելով յերագութեան անցից, և իբրև 'ի բնական տարբեր իւրեանց՝ կանչելով և կայտռելով խաղային 'ի սրընթաց հոսանսն։ Արեգակն խոնարհէր 'ի թիկունս լերանց, և սիւգ ախորժ անկանէր զուղևորօքն և ոչ սառուցանէր. մերձ ընդ մերձ հրարձակ լինէին Զեթունցիք 'ի պատիւ նոցա. այլ ճանապարհն գամ քան զգամ դժուարակուխ լինէր. և 'ի շրջելն ընդ այլ կողմն՝ երևեցան հեծեալք ոմանք, որոց գլխաւոր՝ ճարտարութեամբ մղէր զերիվարն ամեհի. և պատմուճան նորա կարմիր ոսկէման, մուլկքն կապոյտ, մաշլա սպիտակ ծածանեալ 'ի հողմն, և դէմքն արևակէզք՝ սևագոյն ևս երևեալք 'ի վերջալոյսն՝ հեծելապետ ոմն երևեցուցանէին զնա. և էր նա մի 'ի հզօրագոյն մարտկաց ընկերհաչտութեանն, իշխանն Յուսուֆեան, որ և վայելչութեամբ իմն մեծի իշխանի մատեաւ առ ուղևորսն. զհետ նորա գային գունդք քաղաքացեաց 'ի պատիւ, և ստէպ հրարձակութիւնք լինէին. այլ դժուարութիւն ճանապարհին ոչ սակաւ տագնապեցուցանէր զանփորձսն. զորովք՝ մի ըստ միոջէ յաւելուին ուղէկիցք՝ յերկիր խոնարհելով 'ի պատիւ. նոցին փոխանակ ստիպէին և սոքա անդադար ձեռն 'ի լանջս ածել, մինչև 'ի լքումն բազկաց. նոյնպէս և ճայթմունք հրացանից և ատրճանակաց հրարձակութիւնք ստէպ լինէին 'ի լեռնէն. ուստի իջեալ Արարտեանն ողջոյն մատուցանէր ուղևորին, և արկեալ զձեռն 'ի պարանոց երիվարի նորա՝ առաջնորդէր ընդ աղօտն. և ահա ըստուերք իմն ուրուականք երևէին 'ի վերայ լեռնակի միոյ, որ և յանկարծօրէն լուսաւորեցաւ, և իջին տասն ձիաւորք հրարձակք։ Եւ յետ տաժանելոյ իբրև ժամ մի 'ի խռոչս անհնարինս՝ երևեցան տունք սակաւք յայնկոյս խորաձորոյ միոյ. և ուր ուրեմն հասին 'ի վանս (Ս. Աստուածածնի), յետ 12 ժամուց ուղևորութեան. և մեծագոյն ևս և ստէպ հնչէին հրացանութիւնքն հանդոյն ուժգին որոտմանց, առ 'ի պատիւ հիւրոցն, զոր չեմ բաւական, ասէ գրողն, բացատրել արժանապէս. և ցաւէ նմա զի ոչ կարաց նկարել զդիրս հիացուցիչ վայրացն. ընդ որ և մեզ իսկ ցաւէ ոչ սակաւ [1]։

Այն ինչ ելին 'ի դստիկոն մի մենաստանին՝ եկին յողջոյն հիւրոցն իշխանք, քահանայք, զօրագլուխք և պաշտօնեայք, և նստան. զուարթաբարոյ և հարցասէր երևեցաւ եպիսկոպոսն (թուի ծերունին Տէր Սարգիս), և բազմեցաւ՝ յորժամ բերեալ եդին սեղան բրնձով և կթեղինօք, ասելով, Սա փակեսցէ զբերան մեր։ Ուղէգիրն որոյ չէր տեսեալ զլօշ նուրբ, զառաջինն կարծէր զայն ընջոց, և հաց որոնէր, և ուսաւ զի ոչ միայն հաց է, այլ և զդըրգալի և զպատառաքաղի սպաս հարկանէ։

Նկարագրէ զքաղաքն 'ի զառիվայր լերին դար 'ի դար, որպէս թէ մէն տուն այլոյ տան սանդուղ իցէ վերելից. փողոցք առապարք և ծամածուռք ստիպեն զուղևորս մեծաւ զգուշութեամբ գնալ՝ եթէ կամիցին մնալ ողջանդամ։ Զթիւ բնակչացն համարի 20,000. և գլխաւոր արուեստ նոցա ղհալս և պատրաստութիւն երկաթոյ, զոր պէսպէս գործեն. լերանցն առատապէս մատակարարելով զնիւթ բովուց և փառակոյ և պարէնի։ Են 'ի քաղաքին և թուրքք սակաւաւորք, որոց թոյլ առնէ ազնուապէս վարչութիւն երկրին։ — Եկեղեցիքն գծուծք են, և նկարք պատկերացն անարուեստք. (յորոց եցոյց Յուսուֆեանն ստուար գլուխ մի Յովհ. Մկրտչի՝ 'ի փոքրիկ սկըտեղ, զոր բառնային երկու հրեշտակք փոքրկունք՝ յոյժ այլանդակք. իսկ արուեստ ճարտարպետութեան բնաւ իսկ չերևէր). և են թուով հինգ, իբրև մեծամեծ զետեղարանք (hangars) փայտաշէնք մեծաւ մասամբ, յորոց տգեղութիւն յաւելուն ապիկիկք կարմիր և կապոյտ կախեալք կոտորակօք պարանաց յիրար կապելոց խաչոր հանդուցիւք. 15 քահանայք են հնգից թաղիցն, յորոց ոմանք բնակեն 'ի վանսն։ — Ունի Զեթուն և զՊահպանակ իւր (Palladium), զաւետարան ստերդման Վալլի ուրումն. որ մինչ 'ի կարևոր հարկի տալոց էր երդումն և ստեաց, ձեռն աներևոյթ եհար զնա սրով, և արիւնն ցայտեաց 'ի վերայ աւետարանին. զայդ աւետարան 'ի մեծամեծ տօնս կամ 'ի վտանգս՝ հանեալ 'ի պատենից՝ տան պատուել հաւատացելոց [2]։ Անծանօթ են սոցա մեծամեծ զանգակք մեր (Եւրոպացւոց), որոց մարթ էր կործանել զզաղփաղփուն եկեղեցիս աղքատին Հայոց Տաւրոսի. այլ փոխանակ զանգակի՝ կոչնակաւ վարին. (և ստորագրէ զկոչնակն, այլ ոչ որպէս զմերս Նարեկացի. խոստովանի միայն զի կոչնակահարքն գաղտնի իմն արուեստիւ գիտեն ներդաշնակաւոր գործել զզանգիւնն)։

Նշանաւոր են 'ի Զեթուն ընկուզենի ծառք մեծամեծք՝ թուով վեց. էր երբեմն, ըստ պատմելոյ Յուսուֆեանի, զի ապստամբ Եգիպտացւոց եմուտ յերկիրն, կանանց և մանկանց. անդէն ծածկեցան ծառքն երիտասարդօք, և 'ի գիշերի կոտորեցին զամենայն զօրեանն, և թաղեցին զգլխակունսն ընդ անարդիլ ապառաժ կոչկոռով, խաչ երկաթի կանգնեալ 'ի վերայ։ Հարցի գլխանն՝ թէ ո՞չ զանգիտիցէ 'ի նոր յարձակմանց. ծիծաղեցաւ, և եցոյց զապառաժն՝ ասելով, Գոյ տակաւին տեղի բաւական ընդ դոլաւ։

Ի հիւսիսային արևմտեան կողման քաղաքին զննեաց ուղևորն՝ զհուն հեղեղաց լերանց բացեալ 'ի քարաժայռս, յորս քարինք հաստավիրգք կոծկոծեալք և ծակոտեալք անցս տան ջուրց, մերթ պաղպաջուն դարահոս սահանօք, մերթ նուրբ և անձուկ երակաւ, որ երգաձայն իմն կարկաջանօք քծնի ընդ մամռապատ քարինսն. յատակ անդընդոցն՝ պտոյտ ածէ խելաց և քաջապնդաց անգամ. և զարմանամ, ասէ ուղևորն՝ յանձին խմում, թէ զիարդ գիշերայն յայնգունակ վայրս յածեցաք, և ոչ բազում անգամ ջախջախեցան պարանոցք մեր։ Ցափունս գետոյն փայտաշէն լոգարանք են կանանց՝ բացօթեայք. և ոչ որ՝ ասէր իշխանն, չար ինչ ածէ զմտաւ, զի են կանայք և քորք և դստերք մեր։

Համբոյրս բարուք և բարեբնոյթս ծանեաւ ուղևորն զԶեթունցիս. չէր նոցա երբեք սպանեալ զոք առ 'ի գողա-

1 Je regrette de ne pouvoir donner qu'une bien pâle idée de notre réception. J'entends encore à l'heure qu'il est l'écho de la montagne, reproduisant les coups de feu tirés en notre honneur avec un roulement semblable à celui du tonnerre : mon seul regret, avant de m'endormir, est de ne pouvoir dessiner quelques-uns des sites qui nous ont charmés.

2 Տես զոր ասացաւ 'ի վեր անդր՝ յէջ 187։

նալ. այնպէս օրինապահք են՝ զի չիք ամենեւին բանտ յերկրի իւրեանց. այլ եթէ ոք յանցանս ինչ մեծ գործիցէ՝ արտաստահման առնեն. եթէ զղջանայ եւ դառնայ՝ արգելուն 'ի վանս ուրեք ապաշխարել մինչեւ 'ի ժամանակ մի, ապա արձակեն, եւ հրամայեն նմա տալ ողորմութիւն ըստ կարի իւրում: Արք՝ դարբնեն զերկաթ. կանայք՝ դարմանեն զորդն շերամոյ. տղայք 'ի դպրոց երթան ցտասն ամ տիոց, սակաւ ինչ ուսեալ, ըստ չափու գիտութեան վարժապետացն: Ի կրօնապահութեան՝ թէպէտ թոյլ տան Թուրքաց, այլ ոչ եւ ուրացողաց. յամին 1815 մորթեզերծ արարեալ կենդանւոյն այրեցին քահանայ մի՝ որ առ հակառակութեան ուրացեալ էր 'ի հաւատոյն. եւ առանց ինչ ակնառութեան պատմէին զայս:

Յորժամ նոր ինչ կարգս կամիցին մուծանել կամ ուղղութիւն առնել, ժողովեն զերիցունսն եւ յայտնեն զպէտտըս իւրեանց. քահանայքն գումարեն զծերունիս եւ ծանուցանեն զխնդիր ժողովրդեանն. սոքա քննեն եւ որ ինչ լաւ թուի՝ զայն հաստատեն. իսկ գործադիր հեղինակութիւնն յանձնեալ է 'ի չորեսին իշխանս՝ ընտրեալս կամ ըստ տոհմիցն ազնուութեան եւ կամ ըստ հանճարոյ առաւելութեան. եւ լուեալ մեծարանօք զառ 'ի ծերունեացն՝ կատարեն զոր պատշաճ դատին. առ հայրենասիրութեան իւրեանց միայն կարգեալ կան 'ի գլուխ ժողովրդեանն. այլ սորա է գերագոյն կարողութիւն, եւ կարէ մերժել զիշխանսն՝ եթէ գտիցեն 'ի յանցանս ինչ: — Ի ժամանակս պատերազմի աշխարհակոչ առնեն, եւ գումարեն 7 կամ 8000 մարտիկս՝ 'ի վեշտասանամենից մինչեւ ցվաթսունեւհինգամեայս, իւրաքանչիւր իւրով թոշակաւ զինուորեալ [1]:

Յետ այսորիկ ճառէ ուղեւորն զազգային կամ զպատերազմական ինչ երգոյ նոցին, զոր թարգմանեալ եւ հրատարակեալ է Լանկլուայ. զորոյ եւ զգրուած մի՝ եցոյց պանծանօք երեցն Աբարտեան: — Յետ երկուց աւուրց (29 յունիսի) կամելով ուղեւորացն վաղ քաջ ընդ այգն մեկնիլ 'ի Զէթունէ եւ գնալ 'ի Հաճին, ոչ գտին ընկերս յօժարականս՝ առ խեթի թշնամութեան Եգերացւոց. մինչեւ ստգտանել զնոսա առ Խորոյեանն՝ իբրեւ վատասիրտս. իսկ իշխանն որ լուռ եւեթ կայր՝ արկեալ զձեռն զուսով գանգատողին՝ հայեցաւ 'ի թիկունս կոյս. եւ անդէն հասին զինեալք չորք հրացանօք եւ ատրճանակօք, զսպեալ զհանդերձս իւրեանց զմիջովք՝ առ անարգել ընթացս: Արդ՝ երթայք, ասէ, խաղաղութեամբ. դոքա առաջնորդեսցեն ձեզ: Եւ 'ի կամել նոցա տալ նմա ձեռածիր ինչ՝ վասն մարդկանն ընդ առաջ իւրեանց եկելոց, Նախատինք են նոցա, ասէր, ընդունել զայդ. եւ թախանձեալ առնուլ գոնեա վասն տալոյ ողորմութիւն, էառ զոսկին եւ ետ 'ի ձեռս եպիսկոպոսին: — Իսկ չորեցուն երիտասարդացն խոժոռ աչօք հայեցեալ 'ի զինապահս ուղեւորացն՝ յուղի անկան, զիւրեանց ռազմականն ակըսանելով երգել նուագ, յորմէ եւ երկիւղք մեր, ասէ, փառեցան յաշխոյժ խրոխտական:

Գրեաթէ ուղղորդ ընդ զառիվայր էր ճանապարհն. յաջմէ քարաժայռք անհեդեդք եւ երկնաբերձք, յահեկէ անտառախիտ զագաթունք ամպածածուկք. չէ ուրուք նկարեալ գեղեցիկ ինչ քան զոր մեքս տեսանեմք. այս գործ է Աստուծոյ, եւ ոչ այլոյ ումեք դոյ մասն 'ի դմա. մայրիք մրրկակոծք, սօսիք լայնատարածք, եղեւինք արմատախիլք եւ գետնաթաւալ եղեալք՝ մինչեւ ցօրն յորում վառեսցի զնոքօք հուր. կաղամախիք զօսացեալք՝ որոց միայ փոթորիկ մի ուժգին՝ առ 'ի տապալել եւ գործել կամուրջս անարուեստս 'ի վերայ հեղեղատին որ անցց զնոսա: Համօրէն դալար են եւ բարձունք եւ խորաձորք 'ի յոլովութենէ աղբերաց ջուրց հոսեցելոց. միայն ճգաունք ճճուողաձայնք վրդովէին զչուրջ զմեօք պատեալ վսեմական եւ զմեծափառ լռութիւնն. արեգակն թուէր ծաղր 'ի մեզ արձակել ընդ ոստս ծառոց. եւ երկինք կապուտակայինք զգլխովք մերովք լնուին գոհութեամբ զսիրտս մեր՝ առ բնակեալն 'ի նոսին եւ առ պահապանն մեր: — Յետ չորից ժամուց գնացից հասին 'ի թաւուտ մի ծառոց՝ որպէս զոմ շրջափակ, ուր խոխոջայր առուակ ականակիտ, եւ առընթեր եղեւին մի կանգուն այլ զօսացեալ, որ ազդեաց բարոյական խորհրդածութիւնս առ ուղեւոր մեր՝ յելեւէջս ճանապարհին, մինչեւ իջին 'ի դաշտ. անդ ընդ առաջ ելին նոցա Եգերացիք զինեալք, այլ եւ գերանդի յուս. առ որս անքթիթ յառեալ երթային Զէթունցիք ահարկու դիմօք. այլ անվնաս անցեալ առ միմեամբք՝ մերձեցան ուղեւորքն 'ի Կոկիսոն քաղաք, բայց ոչ կամեցան առաջնորդքն մտանել անդր, այլ խոտորեալ տարան 'ի Քիրամի-օղլու հանգրուանս Հայոց. իսկ զինապահքն կամէին երթալ ագանել 'ի Կոկիսոն. բայց զի խիթալի էր 'ի բանից նոցա դրդռիլ համադենից նոցին քաղաքացեաց եւ կռուել 'ի վերայ Զէթունեայցն, ուղեւորքն աղաչանօք՝ ապա եւ զանիւ ստիպէին զնոսա կալ առ ինքեանս. եւ յորժամ անսասեալ միոյ 'ի նոցանէ եւ պրծեալ յարգելչացն՝ վազս առեալ դիմէր 'ի քաղաքն կոյս, մի ոմն 'ի Զէթունեայց ուղղեաց 'ի վերայ նորա զհրացանն. եւ նորա իսկոյն զկայ առեալ յետս նհանջեցաւ: Հասին ապա 'ի վրանս Հայոցն այնոցիկ, եւ մարդասիրապէս ընկալեալք մեծարեցան կթեղինօք. այլ զլօշն ոչ կարացին եւ ատ ճաշակել: Վաղ քաջ ընդ այգն (30 յունիսի) յուղի անկան 'ի դաշտավայրն՝ ուր արածէին արագիլք սպիտակք եւ եզինք լայնեղջիւրք. յետ երկուց ժամուց ժամանեցին 'ի լերինս, եւ անցին ընդ յոյժ դժուարին եւ անձուկ փախուտըս, ուր հազիւ 0,26 Զափու միոյ լայնութիւն էր. բայց առաջնորդքն լեռնականք այծեմանց հանգոյն արշաւէին, զակն յուղեւորսն յառեալ, անդադար ձայն տալով եւ զձեռսըն նշանակելով, մինչեւ հասին յեզր գետոյ. որոյ սահմանք գերազանցեալ իմն գեղեցկութեամբ երեւեցան ուղեւորին, եւ ցաւէ դարձեալ զի ոչ կարաց նկարել. եւ մեք զանց առնեմք զստորագրութեամբն, զի ոչ որոշակի նշանակէ զդիրս տեղեացն եւ զհեռաւորութիւն, բայց միայն զուշակի ընդ մէջ Կոկիսոնի եւ Հաճնոյ լինել. ուր եւ ժամանեցին [2] 'ի մուտս գիշերոյն, յետ ելանելոյ եւ իջանելոյ ընդ լերինս դժուարակոխս, վասն որոյ յոյժ զանգատէին զինապահքն. զի 14 ժամս ընթացեալ էին, զատ 'ի դադարմանցն ուրեք ուրեք. եւ մտեալ գիշերայն ազան

1 Տես յօրագիրն Revue des Deux Mondes, 15 févr. 1863.

2 Տես յէջ 165 զբանս հեղինակին, որ է Léon Paul.

'ի վանս Հաճնոյ։ Այսր 'ի վաղիւն (1 յուլիսի) հրաժարեալ Զէթունեայց՝ համբուրելով զձեռս ուղեւորացն և զառաջնորդին Հաճնոյ, (զոր պատրիարք կոչէ ուղեւորն, թերեւս անդ դիպեալ կաթողիկոսին), հանգրիճեալ զհանդերձս իւրեանց, արկեալ զուսովք զհրացանն, և հայեցեալք առ անգամ մի ևս խեթի 'ի զինապահն, եղին ճեպով, և ընթացան երագ երագ ընդ լեառնն Հաճնոյ, թողեալ յերախտապարտ զարմանս զուղեւորսն, որպէս խոստովանին սոքա, ընդ արիութիւն նոցա և ընդ աչալուրջ սպասարկութիւնն [1]։

74. Բ. ԿԱՊԱՆ. Ըստ մարդաթիւ ցուցակի վիճակիս՝ երևի յետ Զէթունի՝ գլխաւոր ամենայն գիւղօրայից նորին Ալապաշ, աւելի քան 3000 հայ բնակչօք, այլ երկբայելի է. մանաւանդ զի յամի անդ աղմկին (1861), ըստ լրագրաց ոմանց՝ 44 տունք էին անդ, բայց թերեւս աւերեալքն միայն։ Սակայն զմեծութիւն և զգլխաւորութիւն տեղւոյն ցուցանէ և ազգային հին անունն Արեգին, կամ լաւ ևս Արեգնի, յոր ցարդ կոչեն Ուլնեցիք. և գիտեմք 'ի վկայութենէ արքունի Պատմագրին, զի վանք Արեգնոյն աթոռ էր Կապանոյ արքեպիսկոպոսին, որ կոչէր Գրիգորիս՝ յամի օծման Լևոնի 'ի թագաւոր (1198-9), և երկրորդ կարգի 'ի թիւ չորեքտասան եպիսկոպոսացն յիշեցելոց, յայտ առնելով մեծ և նշանաւոր լինել իշխանանիստ տեղւոյն, յորմէ և եպիսկոպոսական գահուն. բայց մի անգամ ևեթ յիշատակեալ անուն աթոռոյս կամ վանացս՝ յետ անդ ԺԲ դարու, ոչ ևս յիշի, կամ իմ չիք այլ ծանօթութիւն, և ոչ գիտեմ թէ կայցէ՞ վանատեղի 'ի սահմանս գեղջս։ Յելս ԺԷ դարու (յամի 1695) Մակար պատրիարք Անտիոքայ, որ Հայազգի ասի, և արաբերէն գրեալ է զանցս ուղևորութեան իւրոյ, 'ի գալն 'ի Մարաշայ 'ի Զէթուն [2], ասէ նախ հանդիպեալ յՈւխտ Ս. Կարապետի 'ի տափարակ բլեր, ուր և ախտահաւաք ջերմուկք էին յաճախեալք յուխտաւորաց, և տեղին էր 'ի հանդիպոյ Զէթունի. բայց հաւանօրէն Ֆռնուսի վանքն է սա, զի յանուանէ ոչ յիշէ գրիչն զաւանս զայս։ Ոչ յիշի առ մերայինս և բերդ յայս անուն. և թէպէտ Ապուլֆէտա արաբացի 'ի պատմելն զառումն Մելիտինոյ յելս ապրիլի 1315 ամին՝ 'ի զօրացն Եգիպտացւոց, (որոց և մի ինքն էր յառաջնորդաց), թուէ ընդ գերեալսն անդ և զՇէյխ-Մանսուռ ոմն՝ իբր տէր Արիգնի բերդի, միաբանեալ ընդ պաշտօնէից Թաթարաց՝ 'ի լրտեսել և յըմբռնել զմուլիմս, այլ թուի որիշ բերդ 'ի սահմանս Եփրատայ։ Թողեալ զայսոսիկ յապայից քննութիւն, մատիցուք 'ի Կապան՝ ուր երբեմն զմեզ յիշատակ Արեգնի, փափագելով նախ՝ քաջ ստուգել զդիրս երկոցուն այսոցիկ տեղեաց. քանզի Ալապաշ (եթէ իցէ արդարև չէնն Արեգնի՝) յարևելս հարաւոյ Զէթունի է, իսկ Կապանն նշանակի 'ի քարտէսս յարևմտից հարաւոյ նորին և ոչ սակաւ բացագոյն, որպէս թուի 'ի ձորահովտի գետակին (առ որով Թանուր և Ցէօնկէլ գեօղք այլազգեաց). այս վտակ 'ի հիւսիսոյ կուսէ խառնի ընդ գետակին Ֆռնուսայ, և սուղ 'ի ստորև երկոքին միանգամայն ընդ Զէթունի գետոյն։

Ցայտ իսկ է յանուանէն (որ ըստ Թուրքաց Կէպէն արտասանի) բնութիւն դրիցն, յանձուկ անցս լերանց, հանգոյն արևմտեան անցից պահակին Կիլիկիոյ. թերեւս կածան նրբուղի 'ի կողմանց Կոկիսոնի՝ որպէս ընդ արևելս 'ի Մարաշ հանէր, հանցէ և ընդ արևմուտս հարաւոյ՝ ընդ այս կապան՝ յԱնաւարզա. հարկ է և յաճախեալ լինել երթևեկին 'ի հնումն. այլ 'ի նորումս չիք իմ հանդիպեալ և ոչ միոյ ուղէգրի՝ որոյ անցեալ իցէ ընդ այս, կամ յանուանէ նշանակեալ. սակայն աներկբայ է առաջնոցն մերոց պայազատաց երկրիս՝ տիրանալ և այսմ կարևոր կածանի, որպէս ցուցին նախագրեալ վկայութիւնք պատմչաց զՊարոն Լևոնէ, որ ունէր զԿապան ընդ Վահկայի և ընդ Կարմիր լերին, և յետ գերութեան նորին գողացեալ եղև յԱհմէտէ ումեմնէ Մէլիքէ (1138). բայց որդին Լևոնի Թորոս Բ՝ թափեաց վերստին ընդ այլսն և զայս հայրենի ժառանգութիւն։ Սորա եղբօրորդի՝ Ռուբէն Բ՝ յամի 1182 ետ զտեղին 'ի կալուած քաջի և բարեբաղդ եղբօր իւրում Լևոնի Մեծի, իբրև գերագոյն իմն վիճակ, սակս ամրութեան բերդին, լեռնային և ջրային անցիցն. քանզի մերձ գոլով 'ի Ջահան գետ և յօժանդակ մի նորին, հարկ էր ուղևորաց և վաճառականաց ընդ այն անցանել. վասն որոյ և բաժտուն հաստատեալ էր տերանց տեղւոյն հուպ 'ի հուն անցիցն։ Թուի Լևոնի 'ի յաջորդելն զեղբայր իւր՝ պարգևեալ զտեղին փռանկանուն կամ փռանկ Տանգրի իշխանի, որ և գըտաւ 'ի հանդիսի թագադրութեան իւրոյ. իսկ յամի 1215 յորժամ վերահաստատէր Լևոն զպարգևագիր ազատաշնորհ վաճառականութեան Գենուացւոց՝ յերկրի իւրում, ոչ անպարտ առնէր զնոսա 'ի վճարելոյ զբաժն յանցս Ջահանոյ՝ առ տէրն Կապանի, որ էր յայնժամ Լեւոն ոմն իշխան. Excepto *Passagio* quod Dominus *Leo de Cabban* habet in flumine quod vocatur Jahan. Յետ երկուց ամաց Քէյքաուզ Իզէտտին սուլտան Իկոնիոնի պաշարեաց զԿապան, յորոյ վերայ առաքեաց Լևոն արքայ զզօրս իւր և զհեծեալս. որք « գնացին իջան 'ի Շողականն ? վերև
» 'ի լեառն. և սուլտանն սկսաւ սերտ կռուիլ 'ի վերայ
» բերդին. բայց Պարոն Լևոն տէրն Կապնուն և այլ իշ-
» խանք որ կային 'ի ներս՝ ելան 'ի դուրս, ու զարկին
» իւրեանք, ու զիւրեանց պահերն ընդ ափ տարան, ու
» այրեցին զբարնին (բաբան), ու այնով պրծան զետ
» քաջ մարդիկ։ Եւ սուլտանն խորհեցաւ իջուցանել 'ի
» զօրացն 'ի դաշտ. և ելան եկին առաւօտուն 'ի տեղի
» մի Շողական, որ կոչի Իղտի. նա Պարոն Կոստանդին՝
» Գունդստապլն՝ ընդդէմ գնաց և եզարկ զիւրեանք իւր
» զօրօքն ու խառնեցաւ. ու Պարոն Ատանի զօրքն չօգ-
» նեաց, հայնց որ շատ էր Թուրքն։ Եւ 'ի տեղն առին
» ծառայ (գերեցին) զգունդստապլն Հայոց զԿոստանդին՝
» զորդի քեռոյն թագաւորին Լևոնի, և զՊարոն Կոս-
» տանդին՝ զորդին Հեթմոյ՝ Լամբրունին տիրոջն, որ էր

1 Nous ne pouvons nous défendre d'un sentiment plein de reconnaissante admiration pour ces intrépides enfants du Taurus, toujours en train, toujours obligeants.

2 Ցեշելի է զի Մակար 'ի գալստեան իւրում 'ի Զէթուն, զամենայն սահմանս նորին գերփեալ և աւերեալ ասէ 'ի զօրաց Հասան փաշայի, վասն որոյ ոչ եգիտ 'ի պարէն ոչ միս, ոչ ձու և ոչ պանիր, այլ գինեակ սակաւ։ Ոչ գիտեմ ո՞ և զինչ այլ ինչ գործեաց ստանօր յիշեալն Հասան, ոչ ունելով 'ի ձեռին զգիրս Մակարայ։

» իւր անձր, և զԿեռ Սակ՝ զՍիկոյ տէրն, զԱցիլ զՕքսենց, և այլ իշխանք և ձիաւորք. և եղև կոտորած 'ի » զօրքն Հայոց, և տարան զամէնն առ սուլտանն 'ի Կապան: Նա սուլտանն ասաց, Թէ այս ինձ հերիք է. և » չէառ զԿապանն. և ելեալ գնաց յիւր աշխարհն, և եդ » երկաթէ կապով զնոսա 'ի բանտ. և անդ կացին տարի » մի և չորս ամիս ». մինչև Թափեաց զնոսա Լևոն տըւեալ սուլտանին փրկանակ բերդս ինչ: — Յետ այսորիկ ոչ գտանեմ յիշատակ զԿապանոյ ցվերջ ԺԳ դարու, յորում ժամանակի Կոստանդին (Բ), որդի Բ Լևոնի, էր տէր բերդին: Նոյնպէս և եպիսկոպոսք ոչ յիշին յայն միջոց ժամանակի, այլ յառաջ և յետոյ՝ այսոքիկ, յամս,

1193 Ներսէս
1198 Գրիգորիս
1307-14 Բարսեղ
1317-8 Յակոբ
1342 Ներսէս

Հաւաստի երևի մնալ Կապանի 'ի ձեռս պայազատաց երկրիս մինչև ցվերջ Թագաւորութեանն. այլ ոչ է ստոյգ Լևոնի վերջնոյ այսր ապաստանիլն և ժուժկալել պաշարման յԵգիպտացւոց և անձնատուր լինելն. այս ամենայն 'ի Սիս եղեալ է: Իսկ Կապան ըստ Նախասացեալ յիշատակի (յէջ 184) զարմից Հեթմոյ զօրավարի՝ յետ սակաւուց Նուաճեալ ասի 'ի կնոջէ Նորին Զարմանայ, և մնաց 'ի ձեռս Հայոց մերձ ցկէս ԺԵ դարու. յորմէ և այսր անյիշատակ է 'ի պատմութեան և յաշխարհագրութեան. այլ զի այդքան կարևոր տեղի էր՝ ամրութեամբն, և անցիւք ճանապարհի և մեծ աթոռով եպիսկոպոսութեան, յոյժ արժանի է քննութեան և յուսալի ազգայնոց յիշատակաց: — Զարդիս երեք տեղիք ճանաչին յայս անուն. մի աւանն մեծ Կապան, իբր 400 տամբք Հայոց և եկեղեցեաւ, յարևմտից կուսէ Պնտուխ գեղջ. երկրորդն՝ փոքր գիւղ, յորում միայն 20 տուն Հայոց ասի լինել, և այլն Թուրքաց. իսկ երրորդն է 'ի գլուխ ձորոյն և 'ի լեռնոտին՝ հռչակեալ բերդն Կապան, ընդ մէջ Ֆռնուսի յարևելից, և Աստուածաշէն լերին՝ յարևմտից, մերձ 'ի Գըրքկեօզ գիւղ, յորում միայն 10 տունք են Հայոց: — Քննելի է 'ի սահմանս Կապանի և յիշեալն 'ի պաշարման Նորին 'ի սուլտանէն՝ տեղին Շողական, ուր և բերդ ոչ աննշան գուշակի լինել. քանզի էր Նորա և իշխան փռանկ կամ փռանկանուն Ճօֆրի՝ յելս ԺԲ դարու, զուգաժամանակ Տանգրեայ: Թուի Թոռն սորա՝ Թէ ոչ սա ինքն՝ վախճանեալն յամի 1256, զորմէ գրէ արքունի պատմիչն. « Իշխանն Ճաւֆրի յերկրէն Կլիկկիոյ, որ էր Ներքինի 'ի » մարդկանէ եղեալ, և էր ազգաւ քրիստոնեայ, բարիոք » խոստովանութեամբ փոխեցաւ 'ի կենցաղոյս »: Եւ զի ասի 'ի պատմչէն Սմբատայ՝ Իզտի Եւ կոչիլ տեղւոյս այսորիկ, մարթ էր համարել զայժմեան Նշանակեալն 'ի ցուցակին՝ Եէգիտղէր գեօղ հայաբնակ, որ Աւագենք կոչի 'ի սոցանէ, բայց մերձագոյն է սա 'ի Զէթուն քան 'ի Կապան:

Զորք կամ հինգ ժամուք 'ի հարաւոյ Զէթունի է Անդրէասանք գիւղ յանուն Անդրէի ուրումն 'ի բնակչացն՝ Նշանաւոր եղելոյ, բայց 'ի Թուրքաց՝ Աչապօզան կոչի գիւղն. և ոչ գիտեմ ընդէ՞ր զոյգ գրիցի ընդ միւսոյ գեղջ Խէպի կոչեցելոյ և Ֆինկ յայլազգեաց. որ Թուի բուն գիւղն լինել. իսկ Անդրէասանք՝ զի 56 ոգիք միայն գրին Նմա բնակիչք, երևի փոքրիկ ինչ շինատեղի գոլ, որպէս Թէ հանգրուան: Մերձ 'ի Խէպի ուխտատեղի է Ս. Գէորգեայ, ուր և շինեցաւ մատուռն, դեռ 'ի հերուն: Վերագոյն 'ի Նմին լերին է Շէնպէկ կոչեցեալ տեղի, ուր երբեմն կոտորած եղեալ է այլազգեաց:

Յայլոց Նշանակելոց 'ի ցուցակին՝ մերձագոյն 'ի Զէթուն և արուարձան իմն Նորին համարելի է Էկիքճէնք որ և Թէքքէ-մահալլէսի՝ ըստ Թուրքաց. Ղալըճենք՝ կամ Մուրրատլար ըստ Թուրքաց, ընդ մէջ երկոցուն վանիցն: — Մեծութեամբ և բազմամարդութեամբ Նշանաւոր է Մըխալ կամ Մուղալ ըստ Թուրքաց, և Աւագալ ըստ Հայոց՝ բնակչաց տեղւոյն՝ 2800 անձանց ըստ ցուցակին, ըստ այլոց հին ցուցակաց՝ 100 կամ 200 տուն ևեթ. կարծեմ յարևմտից Զէթունի լինել. զանունն ստուգաբանեն ոմանք Աւագ-այր, որպէս Թէ ըստ Խորենացւոյն՝ Արգար. բայց եկեղեցին կոչի յանուն Ս. Սարգսի: — Իսկ այլ գեօղեանն յորս չգիտեմ ինչ հին կամ Նշանաւոր, Նախ 'ի բնիկ ձորահովտին Զէթունի, և 'ի գլուխ ձորակին՝ է Սարը-կիւզէլ. յորոյ յելից առ Ջահանաւ Նշանակին ագարակք Էցիզճէ-չիֆտլիկ անուն. — 'ի հիւսիսոյ սոցա և 'ի հարաւոյ Պրիտ լերին են երկաթահանքն. անդր քան զլեառնն 'ի հիւսիսակողմն առ ձորակի միում Էանճ-տէրէ կոչեցելոյ՝ Էրէճիկ գիւղ. 'ի ստորև ձորակին և մերձ 'ի խառնուրդսն ընդ Ջահանայ՝ Թումպազ գիւղ: Յարևմտից Էրէճիկի՝ Գամըշձըք փոքր գիւղ. և յարևմտից հարաւոյ՝ Ֆըռնուզ գեօղ կամ հանգրուան և արօտք այլազգեաց 'ի ստորոտս Զավտար լերանց: Ի մերձաւոր սահմանս Զէթունի՝ յահեկէ ջրոյն՝ ընդ մէջ վանորէիցն և Մուրթալար գեղջ է վերոյիշեալ գեօղիկն Եէգիտլէր. և յելից Նորին Իլիճէ: — Յաջակողմն (յարևմտից) ջրոյն 'ի հարաւոյ Զէթունի Նշանակի Սիմագ գիւղիկ՝ յիշեալ և 'ի ցուցակին:

73. Գ. ՖԸՌՆՈՒՍ. — Յատուկ վիճակ Ֆռնուսոյ է ձոր գետակին՝ որ յարևմտից 'ի կողմանց Կոկաց եկեալ միանայ ընդ վտակին Կապանի և Թանուրայ և Նովիմբ ընդ Զէթունի. 'ի միջավայրս ձորոյն՝ յահեկէն՝ որ է 'ի հիւսիսոյ, կայ մի 'ի մեծագոյն կամ բազմամարդ գեօղից Ուլնիոյ Թեմին, Ֆըռնուս կամ Ֆըռնուզ, և ըստ Նախնեաց՝ Ֆօռնօս. որ և ըստ օսմանեան վարչութեան՝ առանձնակ վիճակի գլուխ է և աւան, մականուանեալ Խժոտ, յորոշումն հնոյն Ֆըռնուզայ՝ որ կայ վերագոյն յարևմուտս հիւսիսոյ 'ի վերայ Սէկի-կէօյիկ անուանեալ լերին, (ուր խնդրելի է և բերդն), և սակաւաբնակ է. զսա համարին շատք 'ի մերձաբնակաց լինել Ուլնի կամ Ուլնի: Այս է յիշատակեալն 'ի սկզբան Թագաւորութեան Լևոնի ընդ այլ իշխանանիստ բերդօրայս, տէր ունելով յայնժամ զոմն Ապլղարիպ. յետ որոյ ոչ ևս յիշի առ հարստութեամբ յաջորդաց Թագաւորին. այլ յետ Նոցին յելս ԺԴ դարու և 'ի սկիզբն ԺԵ*, ընդ Կապանաւ գրաւեալ 'ի Հայոց՝ առաջնորդութեամբ աշխուժուհւոյ Զարմանայ, որոյ և յիշատակք արութեանն ասին գրեալ 'ի գիւանս կամ 'ի կոնդակս վանաց Ֆռնուսի, այն է Սուրբ Կարապետ, 'ի հիւսիսոյ աւանին, և որոյ վանահայր էր

'ի Նոյն զարմէ առնն Զարմանայ (Հեթմոյ)՝ Ղուկաս վարդապետ յամի 1557 ։ Հայրս մեր Ինճիճեան Թուի չատ հեռացուցանել զաւանս այս 'ի Զեթունէ, երկօրեայ առեալով. և ստորագրէ, « Կառուցեալ առ փոքր գետա֊ » կաւ. յանկողս գետակին է լեառն՝ պատեալ առ հա֊ » սարակ կաղնի ծառովք. յայսմ լերին է մենաստան » Սրբոյն Ստեփաննոսի Ուլնեցւոյն, որ միով ժամաւ հե֊ » ռի անկանի 'ի Ֆլռնըզէ. իսկ զթիկամբք սոյն լերին՝ » առ ստորոտով՝ է մատուռն, և 'ի մատրան անդ գե֊ » րեզման Սրբոյն յաճախեալ յուխտաւորաց նաև յայլ֊ » ազգեաց, սակս պքանչելեաց. յանկիւն ինչ գերեզմա֊ » նի Սրբոյս՝ բղխէ ակն բարեհամ ջրոյ, զոր առեն լի֊ » նել տեղի ճկութի նորա. իսկ արտաքոյ մատրան բղ֊ » խէ նոյնպէս այլ ակն պատուական ջրոյ »։

Ճարական մի է 'ի ձեռին մերում գեղեցիկ մագաղա֊ թեայ, պատկերազարդ, գրեալ 'ի Ֆլռնուս յամի 1578, յորում այսու ձևով յիշատակագրէ Մարգարէ քահանայ.



46. Ճարական գրեալ 'ի Ֆլռնուս.

պակասէ հետևորդ բանն ընդ թղթոց գրոցն. յորում թեր֊ ևս նշանակեալ էր և Սուրբ Կարապետ եկեղեցի կամ վանք։ — Ֆռնուս-խժոտ աւանի 400 տունք են Հայոց. Մուրատ Բերիացի յամի 1840՝ նշանակէր տունս 600 եր֊ կոցուն միանգամայն, Պարտիզպանեանն 300, որում 'ի ճահ գայ և նորոյ ցուցակին թիւ 2400 ոգւոց. այլ ոք յամի 1854 գրէր 100 տուն բնակիչս՝ հովիւս, այգեգործս և ոստայնանկս։ — Ի վանս Ս. Կարապետի նստի եպիսկո֊ պոս, ոչ գիտեմ յորմէ հետէ, զի ոչ յիշի յանցեալ դարս. իսկ 'ի յետին ամքս (1878) հուչակեցաւ Նիկողայոս ե֊ պիսկոպոս Գալթեան, (յառաջն Ստեփաննոս կոչեցեալ 'ի վանահայրութեանն), կալանաւորեալ ընդ Զեթունեայց յոլովից՝ իբրու ապստամբաց, և բանտեալ 'ի Մարաշ և 'ի Կ. Պօլիս։ Մերձ 'ի վանսն՝ առ այլերբ միով քան֊ դակեալ է խաչ մեծ 'ի քարաժեռի, որ՝ զի առ նովաւ կատարեն զհանդէս ջրօրհնեաց՝ կոչի Գետ Ցորդանան։

Ի սահմանս Ֆլռնուսի են, յարևմտակողմն՝ Պետուշխ գիւղ 'ի միջահովտի երկոցուն գետոց (Ֆլռնուսի և Կա֊ պանոյ), 150 տամբք Հայոց. յարևմտեան հարաւակողմն՝ Ճուըլկի կամ Ճիպլիկի, 200 տամբք Հայոց և սակաւուց Թուրքաց։ Ի հարաւոյ սորին է աւանն Նէճիպէ գալէ (Նոր բերդ), որում՝ յիշեալ ազգայինք մեր գրեն՝ մին 400, միւ֊ սըն՝ 200, և նորագոյն ոմն 300 տունս Հայոց. աստանօր 'ի նորումս փռանկիսկեան միանձունք լատինք հաստատե֊ ցին վանատուն։ — Ի սոյն կողմանս յարևելից հարաւոյ Ֆլռնուսի՝ յաջմէ գետոյն են և Թէքմէնլիկ կամ Թէքլէմէ֊ լիք գիւղ, 16 տամբք Հայոց. յարևմտակողմն հարաւոյ՝ Թահտալը գեօղաւան։ Հեռագոյն ընդ հարաւ արևմտից՝ Տիքիլի դաչ (Կոթող) գիւղ, յորում 50 տուն Հայոց. Տէօն֊ կէլէ, Ճղուր և Անտըրըն (Անդրունն? յիշեալ յէջ 169), յորս սակաւ են հայազգիք, յոլով այլազգիք։

Ի գլուխ ձորագետոյն Ֆլռնուսի է Ջուզուր հիսար կամ ըստ Ուլնեցւոց՝ Զուխրասար գեօղ Թուրքաց, որ է հին աւանն և գղեակ Կանչի, զարդիս Կանչուկ կոչեցեալ, յիշեալն 'ի վկայաբանութեան Ս. Ստեփաննոսի Ուլնե֊ ցւոյ, ուր և գտեցաւ իսկ հանդերձ ընկերօքն՝ 'ի զալ անդր Սոկրատայ դատաւորի 'ի Կոկիսոնէ, յորոյ և 'ի հարաւոյ կայ. և որպէս ասի 'ի ցուցակի բառակարգ աշ֊ խարհագրական անուանց, « Կանչի բերդն՝ 'ի սահմանս » Կոկիսոնի Հայոց, 'ի մէջ Կոկիսոնի՝ որ ասի Կօկսու և » Ֆռնուզու »։ Մերձ նմին ցուցանեն զտեղիս նահա֊ տակութեան Ուլնեցւոյն, ուր և մատուռն է կանգնեալ, և զկուսանացն։ Ի վերոյ աւանին ամբառնայ Կանչի բերդ մի 'ի հնագունից յերկրիս Սիսուանայ, գէթ ըստ յիշա֊ տակութեան. որ և ունէր իշխան յելս ԺԲ դարու զԱ֊ շոտ ոմն. յետ որոյ և այլոց՝ կալաւ զտեղին Օշին եղբայր Ա. Հեթմոյ թագաւորի, (որպէս յիշէ պատմագիր եղբայր նորա Սմբատ), ուր և մեռաւ յամի 1265։ Համանուն նորին՝ թերևս և թոռնն՝ Օշին[1] յելս ԺԳ դարու տիրէր բերդին, և գրեաց տաղաչափեալ թուղթ երեսուն և ութ տող, « Առ Տէր Գրիգոր այրն Աստուծոյ, եպիսկոպոսն Անաւարզայ, » յետոյ կաթողիկոս, սկսանելով այսպէս.

« Պարծանք իմ 'ի Քրիստոս, յուսոյ տեղի հոգւոյս
Նուաստ,
Գլուխ պատկառելի փոխան զլխոյն տուեալ մեզ
աստ, . . .
Տեառըն Գրիգորի՝ Անաւարզայ դիտապետիդ՝
Յօշնէ՝ հնազանդ որդւոյ՝ ընկալ զողջոյն իմ ընդ
նամակիդ. »

գուշակելով զամբառնալ նորա յաթոռ հովուապետու֊ թեան Հայոց. վասն որոյ և 'ի դէպ է առել գրեալ 'ի մի֊ ջոցի 1293-4 ամաց, յետ գերութեան Ստեփաննոսի կա֊ թողիկոսի 'ի Հռոմկլայն. յաւել Օշին, և « Մատանի՝

1 Հայր Զամչեան առէ զՕշինս այս լինել որդի? Օշնի որդւոյ Կոս֊ տանդեայ տեառն Լամբրունի։ Ոչ կարեմ ստուգիւ ասել ո՞ իցէ քեր֊ դող տողիցս. զի 'ի միում յայնմ ժամանակի գտանին բազում համա֊ նուն իշխանք. որպէս Օշին արքայեղբայրն, Օշին սպարապետ և սե֊ նեսչալ՝ որ սպանաւ յամի 1307 ընդ Հեթմոյ Բ 'ի Պիլարղուէ, և Օ֊ շին որդի Հեթմոյ Պատմչի՝ թոռն Ա. Օշնի (եղբօր Ա. Հեթմոյ), և սա թուի ինձ չափաբանն ընծայատու. քանզի և եղբայր նորա Կիրակոս յետոյ ճանաչի տէր Կանչոյ։

» յուղարկեաց Տէր Գրիգորի 'ի հետ թղթին» . և գըրեաց այսպէս.

«Մատանիս այս շնորհաւոր ձեզ 'ի հրաւէր՝ հասցէ 'ի Տէր,
Ի գուշակ այս պետութեան լինել Հայոց հոլիւ և տէր.
Ոսկիդ՝ որ ման առեալ՝ զժողովուրդ քո ցուցանէր.
Եւ ակնըդ պատուական՝ ըղմաքրութինդ արտայայտէր[1]»։

Յամի 1320 Կիաւդին (Գուխտոն) եղբայր Օշնի Պայլի տէր էր Կանչոյ, և մարտնչելով ընդ Եգիպտացիս 'ի սահմանս Այասու՝ խոցեալ մեռաւ։ — Կանչի թուի գրեալն Hanga և Hange և վկայեալ բերդ մեծ, Castrum magnum, յոր՝ յաւուրս Դ Լևոնի 'ի ժամանակի չփոթից և վիճից վասն ծիսական և կրօնական խնդրոց (1336), եկեալ էր նախանձայոյզն Ներսէս Պալոն, և գրէր առ կաթողիկոսն Յակոբ, որպէս թէ 'ի ժամ պատարագելոյ անդ Տիրակի կամ Կիրակոսի[2] ուրումն քահանայի, 'ի ներկայութեան բազում ժողովրդոց եկելոց և 'ի Շահապ (Villa Sahap) բերդաւանէ, 'ի բարձրացուցանելն զսուրբ խորհուրդն և յասել Սրբութիւն սրբոց, բանադրեալ իցէ 'ի վարդապետէ միոյ, վասն յայտ յանդիման ցուցանելոյ նորա առ ժողովուրդն զխորհուրդն ահաւոր։ Առաքեաց կաթողիկոսն անդր զԲարսեղ մամուեստացի եպիսկոպոս Իկոնիոնի և զքարտուղար իւր՝ քննել զիրսն. և նոցա ժողովեալ եպիսկոպոսունս հինգ և քահանայս երկոտասան և վկայս, և հարցափորձեալ՝ սուտ գտին զամբաստանութիւնն. և հազիւ զերծան Ներսէս և քեռորդի նորա չարադրող մուրհակին՝ 'ի քարկոծմանէ ժողովրդեանն։

Յետ բարձման թագաւորութեանն Հայոց, որպէս երկիցս յիշեցաւ, Հեթում յետին սպարապետ և կին նորա Զարման՝ տիրացան Կանչոյ. յորոց զարմէ էին յիշատակող իրացս Կիրակոս վանահայր Ս. Ստեփանոս վանաց, և այլք՝ վերագոյն նշանակեալք։ — Անհամբոյր դէպքդ կրօնական՝ 'ի պէտս տեղագրութեան յայտնեն՝ զի էր և Կանչոյ աւան, որպէս և այլոց գլխաւոր բերդորէից, ուր նստէին իշխանքն. և զի մերձ նմին գոյր և միւս այլ բերդ հանդերձ աւանաւն, Շահապ, որ թէպէտ զառաջինն գեօղ միայն կոչի (villa), յետոյ վասն երկոցուն միանգամայն ասի՝ ընակիչք բերդորէիցն ասացելոց. populi dictorum castrorum. — Մերձ 'ի Կանչի, որպէս և 'ի Դուլմարիք տաճկաբնակ գիւղ՝ են քարայրք, երբեմն բնակութիւնք ճգնաւորաց, յորս գտանին, ասեն, արձանագրութիւնք յունարէնք, և խաչ քանդակեալ։ — Լեառն բարձր, կարծեմ Աստուածաչէն՝ 'ի Հս. Մ. անջրպետէ զսահմանս Կանչոյ 'ի Կոկիսոնէ. այլ 'ի հասարակի յանուն Կապանու կոչին լերինք կողմանս, և առանձնակի՝ Ջոխախ, Փիւրին, Մէկ, և այլն։

Մերձաւոր անուամբ Կանչոյ՝ նոյն և դրիւքն թուի լինել և ոչ աննշան բերդն՝ Ճանճի. զի 'ի չարս անդ տեարցն եկելոց 'ի թագադրութիւն Լևոնի՝ այսու կարգաւ անուանին գահքն. Բերդուս, Կանչի, Ֆոռնոս, Կապան, Ճանճի, Շողական, Մազոտ խաչ, և այլն. արդ բաց յերկուց յետնոցդ՝ այլք 'ի դոցանէ ցուցանին 'ի սահմանս աստ, ապա և Ճանճի մերձ նոցին խնդրելի է. որոյ տէր 'ի ժամանակի անդ մեծի հանդիսին էր Կոստանդին ոմն. յետ եօթանասուն ամաց տէր Ճանճոյն էր Վասակ՝ որդի Կոստանդեայ թագաւորահօր, այսինքն անհամամայր եղբայր Հեթմոյ Ա, և առաքեալ 'ի նմանէ հանդերձ այլովք 'ի պատանդ՝ առ սուլտանն Եգիպտոսի, զի ընկալցի զորդի իւր Լևոն, և առաքեսցէ նմա զփոխելի նորա Սնղուր։

Ըստ մերձանմանութեան ձայնին՝ 'ի դէպ գայ Ճանճոյ, ըստ դրիցն՝ Կանչոյ, բերդատեղի մի նշանակեալ ընդ մէջ Կոկիսոնի և Կապանայ, յեւրոպացի ուղևորաց ոմանց, այսինքն են Մոլդքէ՝ ըստ լրոյ, և Դեսիէ ըստ տեսութեան. առաջինն ամենևին խորթ և այլայլեալ՝ Մարիանչիլ-զալէսի գրէ (Mariantschil), երկրորդն՝ Ջինչին-զալէ (Tschintschin)։ Սա յամսեան յունիսի 1836 ամի գալով 'ի Կոկիսոնէ 'ի հարաւ կոյս, ընդ ճանապարհ հնգից ժամուց ընդ ափափայ ուղի, ժամանեաց 'ի հանգրուան մի Թուրքմանաց. գլխաւոր տեղւոյն Օսման պէյ՝ ծանոյց նմա զի գոյ 'ի մերձակայս բերդ մի զարմանալի, երբեմն եղեալ Գենուացի իշխողի հզօրի, որ յերկար զդէմ կալեալ բազում մահմէտական պէկից, ապա գնաց 'ի վերայ Մարաշոյ, և ոչ ևս դարձաւ։ Ժամու ևս հեռագոյն էր բերդն յընդարձակ հովտի 'ի բրգաձև ափափայ քարաժեռի, յորում չերևէին հետք շաւղի. այլ աստի ձոր և անտի սահանք ուղխահոս վտակի. պարսպապատ էր համակ կատար քարաբլրին, և ստորոտքն մացառացեալ պուրակօք վայրի ձիթենեաց և գիհեաց։ Բազում աշխատութեամբ մագլցի և յափիթերս ել Դեսիէ՝ մինչև 'ի պատուարսն, որք ըստ անկանոն ձևոյ զագաթանն՝ ածեալ են կրկնակի. եմուտ ընդ պատառուած մի 'ի մէջ կրկին բրգապատ պարսպաց. և ետես ներքսագոյն ընդարձակ ամուր տեղի, և շուրջ զնովաւ այլ սրահս և սենեակս, որոց շատք ունէին մուտս ստորերկրեայս, հաւանօրէն քարափորս, և մին անշուշտ էր ջրամբար. 'ի ծայր մի ամրոցին կայր կիսաւեր յարկ եկեղեցւոյն, այլ ոչ երևեցաւ արձանագիր ոչ 'ի նմա և ոչ այլուր։ Իսկ ոճ շինուածոյն սրաձև կամարօք՝ աննման շինուածոց Անազարբայ՝ ոչ հայկական թուեցաւ Դեսիէի, այլ արևմտեան, իբրու 'ի Խաչակրաց անտի շինեալ. ինձ ոչ թուի հաւանելի՝ յայսպիսի զանխուլ վայրս դադարել սոցա։ Ընծայէ ճարտար քննիչն և զպատկեր բերդին (յէջ 195)։

76. Ի բնիկ գետահովտին Ջահանայ՝ յայսմ վիճակի Զեթունի՝ են ևս գեօղք. յաջմէն՝ որ է յարևմտից՝ Գարաբուր առ գետեզերբն, որպէս և Գանտիլ 'ի հարաւոյ նորին. — յահեկէն՝ (յարևելից) վերագոյն մերձ 'ի սահման

[1] Զայսու ժամանակաւ իբր յամի 1293 'ի կրկնում թագակալութեան Հեթմոյ Բ, դաւել զնա խորհին իշխանքն, ըստ Մաղաքիայ ժամանակագրի, և գլուխ համախոհից Պարոնայց առէ նա զՀեթում տէր Կոռիկոսի և զեղբայր նորա Օշին՝ տէր Կանչոյ։ Ըստ մեր գիտութեան տէր Կոռիկոսի յայնժամ էր հռչակաւոր Պատմիչն Հեթում, երկուց Օշնից որդի և հայր, այլ ոչ եղբայր. իսկ Հեթում և Օշին եղբարք յայնմ ժամանակի՝ գտանին 'ի մօրէ աւեն Հայք, որդիք Մարեմայ քեռ Հեթմոյ Ա և Յովհաննու Իպլինայ, որք և հաւանօրէն կէին 'ի Հայս։

[2] Ի լատինն գրեալ է Diracoe, զոր Հ. Զամչեան Տիրատուր համարի. և զանուն վարդապետին Mahznichar կամ Makznihar, համարի Մանաճիհր. այլ զի գրեթէ նոյնպէս գրեալ է 'ի նմին լատին պատճէնի և անուն Մխիթարայ կաթողիկոսի, մարթի և այսմ լինել նոյնպէս Մխիթար։

Նշղխատանայ՝ Մալաղիա, Սոյասի, Ալմալաձիկ, Ջիհա-
նիկ. 'ի հարաւոյ սոյին առ գետեզերբն՝ նախալեռնեալ
գեօղն Ալիշէր, և յետյ հարաւոյ նորին լեառն համանուն,
յորում տրամախաղք Բերդիկ գեղջէից. խոնարհագոյն
են Գարամանլը, Գէյրխնար. և են 'ի ստորև մերձ 'ի սահ-
մանս Մարաշոյ՝ աւերակք Մազատոպար կոչեցեալ: Ցեկից
հարաւոյ Ալիշէր լերին ամբառնայ Ընկուզեկ լեառն իբրև
8000' բարձր. առ որով կարծեմ զԸնկուզուտն բերդ և
աւան. քանզի և 'ի գաւառագրի բերդորէիցն՝ յառաջ
քան զՄերդենչանակեալսդ՝ գրին Ընկուզուտ և Թոռնը-
կայ. առաջինն թեմ էր եկեղեցական, եպիսկոպոս ու-
նելով առ Թագաւորութեամբ Լևոնի՝ զՏէր Միխիթար,
և բերդատէր՝ զԻշխանն Պաղտին: Երկրորդն՝ միայն այ-
գու մեծատակաւ գուշակի ող հեռի 'ի սահմանացս լինել.
և 'ի նմին ժամանակի բերդատէր ունէր զՍտեփանն ...:
Ի հարաւոյ Ընկուզեկ լերին և 'ի հիւսիսոյ Ախրա
լերին՝ որ սահման հատանէ գաւառին Մարաշոյ, գրեա-
թէ հաւասար հեռի յերկոցուն, և իբր փարսախաւ 'ի
հարաւոյ Պէյթիմուրի՝ է Բերդուս, ող անձուկ անկի 'ի
հնումն, եպիսկոպոսական աթոռ գոլով և իշխանանիստ
բերդ. որոյ սահմանք կոչէին Նուկրականն, որպէս գրի
առ Մատթէոսի Ուռհայեցւոյ, ըստ մերս օրինակաց, և
կամ Նորիկական, այլ լաւագոյն թուի գրել զնա յարքունի
պատմչէն՝ Նուկրականն: Ի սկզբան պայազատութեան
Ռուբինեանց էր ընդ իշխանութեամբ մեծի իշխանին
Գող Վասլի, որ և յասպատակել անդր 12,000 զօրաց
Պարսից (Թուրք Իկոնիոնի) յամի 1107, «զօրաժողով ա-
» րարեալ զգունդն Հայոց. և նորա որպէս զարծուիս և
» կամ որպէս զկորիւն առիւծուց հասանէին 'ի վերայ
» այլազգեացն, և արարին սաստիկ և ահաւոր պատե-
» րազմ, և մեծաւ յաղթութեամբ դարձուցին (զնոսա)
» 'ի փախուստ. և միարան որով զհետ ընթացան, և ա-
» րարին անթիւ կոտորած 'ի նոսա. և կալան զբազումս
» 'ի նոցանէ, և թափեցին զամենայն առ և զգերու-



47. Ճանճի բերդ.

» թիւնն [1] »: «Իսկ կալան 'ի նոցանէ զգլխաւորս հինգ, և
» դարձան մեծաւ յաղթութեամբ 'ի բերդն, գոհանա-
» լով զՏեառնէ [2] »: Յետ մահուան Վասլի և գերութեան
Ա. Լևոնի՝ օտարք տիրեցան միանգամայն նոցին. իսկ 'ի դառ-
նալ Թորոսի Բ. 'ի գերութենէն և 'ի թափել զհայրենի
կալուածս, եղբայր նորա Ստեփանէ յանդգնորէն և
անհրաման 'ի նմանէ ասպատակեաց կողմանց ընդ Մա-
րաշոյ և Կոկիսոնի և զԲերդուս, պաշարմամբ նեղեալ
զնա 'ի կամաւոր նուաճումն, խոստմամբ խնայելոյ 'ի
կեանս բնակչացն. այլ իբրև լուաւ թէ զերծեալ նոցա 'ի
վտանգէն՝ պատրաստեն կոչել զԹուրքս յօգնութիւն և ա-
ւերել զաշխարհն, «եհարց զեկեղեցականսն. և նոքա ա-
» սեն, թէ այդպէս պատրաստ՝ անխիղճ են յերդմանէն.
» և յղեաց զհինի նոցա, և կոտորեցին զամենեսին. և
» լուան զայն ամենայն այլազգիքն և դարձան 'ի թշնա-
» մանս քրիստոնէից »: Յորոց վերայ եկն Իգին Ալսան
սուլտան Իկոնիոնի յամի 1137, յամսեան յուլիսի. «և
» հրամանաւ մեծին Թորոսի առեալ եղև Բերդուսն 'ի
» սուլտանէն, սիրոյ աղագաւ, առանց կամաց Ստեփա-
» նէի, զոր էր առեալ բռնութեամբ 'ի Թուրքէն, որ էր
» այր ժանտ և ատեցող քրիստոնէից, որ և սպանաւ 'ի
» Ստեփանեայ [3] »: — Երեւի յետ ող բազմաց 'ի բուռն ա-

1 Մատթէոս Ուռհայեցի, 'ի ՇԾԶ թուականի:

2. 3 Պատմիչն Ռուբինեանց:

ծեալ Հայոց զԲերդուս. քանզի յելս ԺԲ դարու տիրէին նմին Լեւոն ոմն իշխան և որդի իւր Գրիգոր. յորում ժամանակի Նստէր անդ և եպիսկոպոս Ստեփանոս անուն: Սակայն յետ իբր տասն ամաց (1208) 'ի ժամանակի գժտութեան Լեւոնի Թագաւորի ընդ կաթողիկոսին Յովհաննու և գաՀընկէց առնելոյ զնա, սուլտանն Իկոնիոնի Խոսրովշահ՝ «'ի սադրելոյ և 'ի խորհրդակցութենէ » Տէր Յոհաննիսի՝ եկն բազում զօրօք 'ի վերայ Բերդուսին, և պատերազմեալ էառ զնա. և ըմբռնեաց զտէր » նորա զԳրիգոր որդի Լեւոնի. և յայնմհետէ Բերդուսն » ելաւ յիշխանութենէ Հայոց»: Զատ 'ի սոցանէ՝ ոչ այլ իշխան յիշի և ոչ այլ եպիսկոպոս Բերդուսի, և ոչ ևս լսի անուն տեղւոյն 'ի գիրս: — Յարեւմտից Բերդուսի և յելից Ջահան գետոյ Նշանակի մեծ քարայր մի, ոչ գիտեմ որպիսի ինչ. այլ զանխլաբար առաջնորդէ մեզ 'ի նոյնանուն՝ գուցէ և 'ի նոյն իսկ՝ յիշեալ տեղի կարեւոր, որ և 'ի բանից նախնեաց գուշակի լինել ընդ մէջ Ջահանեան վիճակացս և Սսոյ և Անաւարզայ. ոչ գիտեմ որպէս կոչէր ըստ քաղաքականին, այլ ըստ եկեղեցական վիճակաց պատշաճի թեմին կոչեցելոյ Մեծքար, յանուն վանաց՝ ուր Նստէր եպիսկոպոսն, զոր 'ի ժամանակի թագաւորութեան Լեւոնի՝ պատմիչն գրէ «Աստուածատուր՝ » եպիսկոպոսն Մեծքրուն»: Անուն տեղւոյն յայտ առնէ զի լեռնային էր կողմն և քար կամ քարայր մեծ անդ, Հաւանօրէն ամրոց ևս շինեալ, թէ և ոչ յիշի 'ի կարգս բերդորէից. բայց տեղին վաղ ուրեմն ամրացեալ էր և սրբութեամբ. քանզի անդ էր Հանգստարան երից վկայիցն սրբոց՝ Տարագոսի Խաւրացւոյ, Պռորոսի Պամփիլիացւոյ և Անդրոնիկոսի Եփեսացւոյ. որք Հարցափորձեալք 'ի Տարսոն, տանջեալք 'ի Մամեստիա, կատարեցան սրով խողխողմամբ յԱնազարբա, յամի 304. յետոյ ըստ Յայսմաւուրաց՝ մարմինքն յուղարկեցան յԻկոնիոն, թերևս մասամբ ինչ Նշխարացն. քանզի առուգապէս վկայէ Անաւարզեցին՝ քաջ ծանօթ վայրացն և իրաց, եթէ բարձեալ Հաւատացելոցն՝ «եղին մեծաւ պատուով 'ի Մեծ» այրն, որ է 'ի Մեծքար, 'ի պատուական տապանս». վկայէ և Հին վկայագիրն յոյն՝ յորմէ և լատինն, In monte in *petra concava* condiderunt. այսինքն է, եղին 'ի լերինն 'ի գոգաւոր վիմի: Յայտ ուրեմն է զի 'ի քարայրի ուրեք Հանգուցան Նշխարքն, որ Մեծ-այր կոչեցաւ, և լեառնն կամ բոլանդակ քարաժայռն՝ յորում էր այրն՝ Մեծ-քար: Զի՞ք երկբայել եթէ անդստին 'ի ժամանակէ դադարման Հալածանաց յաւուրս Կոստանդիանոսի Մեծի, պատուեցաւ տեղին, և տօն սրբոցն կարգեցաւ և յեկեղեցիս Հայոց, որոց վասն և տունք ինչ շարականի յօրինեալ են, ոչ գիտեմ ընդէ՞ր խափանեալ Հասարակօրէն, թերևս զի նախ 'ի կողմանս անդ Նահատակութեան և Հանգստարանի Նոցին յօրինեալ և երգիւր. զոր և յայտ իմն առնէ յետին տունն. «Մաղթանօք սոցա, Տէր, մեզ ողորմեաց, սպասաւորաց սոցին ուխերաց. որք պարակիցք » երկնաւորաց՝ տօնախմբեմք զյիշատակ սոցա ցնծու» թեամբ. ընկալ զմեզ յերկնային խորանդ»: Եթէ ոճոյ շարականիս միտ դիցուք[1], մարթ է և քան զերկոտասներորդ դար երիցագոյն Համարել զայն և զպաշտօնութիւն մերայոցս 'ի տեղւոջս. իսկ ըստ պատմութեան՝ 'ի կէս կամ յետ կիսոյ այնր դարու շինեաց զվանս Մեծքարի՝ օտարախորթն երևեալ 'ի բարեպաշտութենէ քան զամենայն իշխանս մեր յերկրին՝ դժպհին Մլեհ. և 'ի շնորհս շինութեանն՝ – յորժամ սպանաւ յիշխանացն Հայոց (1175) «յաղագս անհանգիստ բարուց իւրոց», - թաղեցաւ աստ 'ի սոյն վանս.

«Յիւրոց զօրացն եղև սպանեալ
Եւ 'ի Մեծքար ուխտըն թաղեալ»,

ասէ Վահրամ: Զվկայարան Ս. Տարագոսեանց լինել յԱնապատին Մեծքար, վկայեն ընդօրինակողք գրոց Գրիգորի Նիւսացւոյ յամի 1260, Ստեփանոս քաՀանայ, և աւետարանի միոյ գրելոյ յետ ամաց ինչ 'ի Թորոսէ սարկաւագէ վասն Ներսիսի սպասաւորի բանի՝ ձեռնտուութեամբ արեանառուին իւրոյ՝ «մաքրակրօն արքեպիսկոպոսին » Տէր Յակոբայ», որ յամի 1268 ամբարձաւ 'ի գահ կաթողիկոսութեան, և Գիտնական մականուանիւր[2]. միւս ևս աւետարանի գրիչ յամի 1293, «յաստուածարնակ » ուխտս Մեծայր», ասէ լինել զտեղին մերձ 'ի Սիս: — Պանծալի քան զյոգունս 'ի վանորէից գտաւ տեղիս այնու՝ զի ուսումնասէր թագաւորն Լեւոն Բ «Տուն կար» գեաց վարդապետաց՝ վասն վարժելոյ զմանկունս՝ ըզ» սուրբ ուխտն Մեծքար կոչեցեալ». որպէս գրէ շարայարող Քրոնիկոնին Սամուելի յամն 1272: Վայել իսկ էր այնմ թագաւորի՝ որ տայր առէպ ընդօրինակել զգիրս սուրբս և պիտանացուս, և յղէր յաշխարՀս իսկ Հեռաւորս՝ ուր պանդխտեալք կային ազգայինքն, աճեցուցանել և զթիւ գրագիտաց: — Յիշատակ լինի վանացս և աթոռոյն Մեծքարի՝ 'ի ժողովին Սսոյ յամի 1307, յորում ընդ վանաՀայրս գտանի Թորոս Հայրն Մեծքարոյն, և ընդ վարդապետսն՝ Գրիգոր: Ի միւս ժողովի յաւուրս Մխիթարայ կաթողիկոսի (1342) էր և վարժապետ Մեծքարոյն՝ Բարսեղ. զի այս տեղի թուի գրեալն 'ի լատինն Mageguar.

Ոչ կարի Հեռի 'ի յիշեալ բերդորէից, և 'ի միջին Հովտի աստ Ջահանայ՝ թուին ինձ և այլ ինչ բերդք յիշեալք 'ի կարգի առաջնոցն, որպէս Անէ, որոյ տէր՝ Հենրի (Henri, Ենրիկ) փռանկանուն. — Մազոտխաչ, որոյ տէր՝ Սիմոն յայնմ ժամանակի (յելս ԺԲ դարու). և յամի 1261 Գրիգոր ոմն, զորոյ 'ի մարտին ընդդէմ Խարամանայ՝ «զաջոյ ձեռին Նորա զբոյթն՝ սրով Հարեալ 'ի » բաց ընկեցին» թշնամիքն: -- Ընդ սոսին յանձնեցին 'ի քննութիւն բարւոյ ժամանակի՝ և Խալիճ և Ա-

1 Թէպէտ և գտանի 'ի տպագիրս ոմանս յեռեալ այս շարական, այլ ոչ 'ի բազումս, և շատից անծանօթ վարկուցեալ կարգեմք աստանօր և զառաջին տունն, որ 'ի Դ ձայնէ, 'ի յիշատակ տեղւոյս, և 'ի պատիւ Սրբոցն և սիրողաց Նոցին.

«Տենչալի տօնիւ սրբոց զուարճանան այսօր եկեղեցւոյ մանկունք, » տօնելով զյիշատակ Տարագոսի քաջ և արի յաղթող վկային, որ է » պսակեալ արեանն իւր Հեղմամբ:

» Պայծառացիր Սիոն մայր եկեղեցի, յիշատակաւ սրբոյն Պռորոսի, որ 'ի մարտի անօրինացն արիաբար յաղթեաց ամբարիշտ ա» րանց. և է առ Քրիստոս փառօք պսակեալ:

» Անարատ զառինն Հօր բարձրողին մեղաց՝ անուշահոտ զանձն ըն» ծայեաց երանելին Անդրոնիկոս, որ զերկնայինն խորհելով՝ չար» չարեցաւ վասն Քրիստոսի, թագաւորելով ընդ Նմա յերկինս»:

2 Ըստ Մաղաքիայ Դպրի ժամանակագրի:

մայք, զորս նուաճեաց երբեմն Ցօվհան Պերփեռուժէն կայսր 'ի գերութեան Լեւոնի Ա, և թուին մարդք և վիճակք, քան թէ սոսկ բերդք. զի այսպէս կարգէ պատմիչն գյիշատակն. « Եւ Պեռպեռուժէն Թագաւորն Յունաց և էառ զԽալիճն, զԱնարզաբա, զՎահկայն, զԱմայքն, զՑախուտն, և զայլ ամրոցսն նոցա » : Յայտ է թէ Ամայքդ ոչ է այն՝ առ որոյ բնակիչս գրեաց Ս. Ներս. Շնորհալի, զի 'ի Միջագետս էր այն գաւառ. այլ թերևս 'ի հոմանուն վիճակին՝ որ ըստ Ապուլֆէտայ (Բ. 51) է 'ի սահմանս լճին Անտիոքայ. թէ և առ հասարակ խորավայր տեղիք՝ առնային կոչին յԱրաբացւոց։ Բայց առանձին չէն կամ բերդ գուշակի Ամայքդ յիշեալ 'ի պատմչէ մերմէ, հանգոյն այլոցն ընդ նմին յիշեցելոց. զնոյն ցուցանէ կարծեմ և Ապուլֆարած, Լմնայի կոչելով զմի յաւերեալ շինից 'ի մեծի սասանութենէ 1269 ամին, որոյ կենդրոն ժամիցն 'ի կողմանքս յայս Ջահան գետոյ երևի գոլ, ուր և Սարուանդաւն կործանեցաւ քարաբերդ, և Համուս՝ յարանուն Ամայից. առ որս մերձենամք տեղագրութեամբս, իջանելով 'ի լեռնակողմանցս Տաւրոսի և 'ի Գահուցն Կիլիկիոյ՝ 'ի Դաշտայինն Նորին մասն :




**48. Վիկտոր Լանկլուա հայագէտ, հետազօտիչ Կիլիկիոյ, յամս 1852–53.**

Ծն. 'ի 20 մարտի 1829, † 'ի 14 մայիսի 1869 :

# Բ

# ԴԱՇՏԱՅԻՆ ԿԻԼԻԿԻԱ



Որպէս ծանուցաւ 'ի ներածութեան գրոցս, բովանդակ միջոց աշխարհիս Սիսուանայ' 'ի լեռնագօտեացն մինչև 'ի ծովափունս, և 'ի կողմանց Տարսոնի' յարևմուից' մինչև յԱմանոսեան լերինս ընդ արևելս, ընդարձակածաւալ և գոգացեալ դաշտավայր է. յատկապար իսկ այսպէս կոչեցեալ' 'ի վաղնջուց ժամանակաց' 'ի Հելլէն օրինակագրաց (Πεδιάδα), նոյնպէս և յայժմուս 'ի Թուրքաց' Չուգուր օվա. յորում երեքին գլխաւոր գետքն' Կիւդնոս, Սարոս և Ջահան' վարեալ զքերածս բարձանց' ոռոգելով և ողողելով զերկիրն' թափին 'ի ծով։ Եւ թէպէտ ոչ ամենևին հարթհաւասար գիտեմք զայսքան ընդարձակ տարածութիւն, այլ և լեռնոտ 'ի միջոցս ուրեք, և մանաւանդ յարևելեան հիւսիսային կողմանն, այլ զի զատուցեալ են բարձունքն 'ի շաղկապեալ լերանց անտի' ընդ որս անցաք 'ի տեղագրութեանս, և դաշտն ծաւալի 'ի լերանցամէջսն, որպէս կոհակս իմն անջատս կամ կղզիս ձևակերպեալ զնոսին, դաշտայնոյս Կիլիկիոյ սեփականք են այն վայրք քան լեռնայնոյն. արտաքոյ միայն թողլով զոլորտ Հայոց Ծոցոյն' որ ընդ մէջ Մասայ և Ամանոս լերանց։ Ըստ այսմ և հին աշխարհագիրն Ստրաբոն' զսահմանս Դաշտայնոյս Կիլիկիոյ' յարևմուից կասէ սկսեալ 'ի Սոլեայ և 'ի Տարսոնէ, ձգէ ընդ արևելս մինչև յԻսսոս, որ է 'ի գլուխ յիշեցելոյ Ծովածոցոյն, և 'ի հիւսիսոյ կողմանէ բովանդակէ 'ի նոյն և զոր առ Տաւրոս լերամբք մասն Կապպադովկիոյ[1]։

Թէպէտ ոչ սակաւ ընդարձակ և բարեբեր է Դաշտային Կիլիկիա, այլ վասն նախածանօթ տօթոյ և ժանտութեան օդոյ' ոչ և կարի բազմամարդ. յայս սակս չեն շատ երթևեկք և քննութիւնք եղեալ 'ի նմին, այլ միայն 'ի քաղաքս և 'ի սահմանս նոցին. վասն որոյ և աշխարհագրական քարտէսք անապատաձև իմն դատարկ երևին 'ի մեծ մասին միջոցին, և ոչ աւելի քան զհին յիշատակս գրոց ծանուցանեն մեզ. և ոչ այլ վիճակս կամ բաժինս ճանաչեմք 'ի դաշտիս' քան զքաղաքացն։ Ըստ այսորիկ ուրեմն և ըստ հովտաց գետոցն' ջանասցուք և մեք յարմարել զտեղագրութիւն Դաշտայնոյս Կիլիկիոյ. սկսանելով 'ի կողմանց հիւսիսոյ արևելից' ուր ժամանեցաքս. և նախ 'ի գետահովտին Ջահանայ, նկատելով յաջմէ նորին զԳարսի-Չիւլգատրիէ և զՍիս, յահեկէն' զԹիլն Համտընոյ, 'ի միջակողմանս հովտին' զԱնազարբա և զՄսիս. ապա զհովիտ Սարոսի և զԱտանա' գլխաւոր այժմեան գաւառաց և քաղաքաց, յետոյ ուրեմն զհովիտն Կիւդնոսի և զՏարսոն։

[1] (Κιλικία) Πεδιὰς δ' ἡ ἀπὸ Σόλων καὶ Ταρσοῦ μέχρι Ἰσσοῦ, καὶ ἔτι ὧν ὑπέρκεινται κατὰ τὸ πρόσβορον τοῦ Ταύρου πλευρὸν Καππάδοκες· Αὕτη γὰρ ἡ χώρα τὸ πλέον πεδίων εὐπορεῖ καὶ χώρας ἀγαθῆς. — Strabo. XIV, V, 1.

# Ա. ԳԵՏԱՀՈՎԻՏ ՋԱՀԱՆԱՅ

## Ա. ԱՋԱԿՈՂՄՆ ՋԱՀԱՆԱՅ ՄԻՆՉԵՒ ՅԱՆԱՒԱՐԶԱ. — ՀՈՎԻՏ ՍԱՒՐԱՆԱՅ. — ԳԱՐՍԻ–ԶԻՒԼԳԱՏՐԻԷ

77. Ի հարաւոյ վիճակաց Զէթունի և Ֆրռնուսի իջեալ Սեաւըրաճ գետոյ, ընդունի յահեկէն՝ որ է յարևելից՝ զԳեալէ-սու (Բերդաջուր), և յետ կուսէ Անաւարզայ խառնեալ ընդ գետակին Սսոյ՝ յետ սակաւ ընթացից թափի 'ի Ջահան գետ՝ 'ի հարաւոյ Անաւարզայ: Ցարևելից հիւսիսոյ հովտին՝ ընդ կողմն Մարաշոյ՝ ամբառնան Մեծ և Փոքր Տիւրտիւղ կամ Հաճի Տիւրտիւղ լերինք՝ 'ի հիւսիսոյ Ամանոսեան լերանց, որ չև ևս են քննեալք, բայց համարին ժամանել ց'10,000′ բարձրութեան: Ի վերին կողմանս հովտին է վիճակն Գարսի–Զիւլգատրիէ իբր 700 ծխով. յոր անուն կոչին մանր գեօղք սակաւք, և գլխաւոր աւանն առ միով յառաջից Սաւրանայ՝ Գարս-պազար անուանեալ. պատճառ Գարս կոչմանն չէ ինձ ծանօթ. իսկ Զիւլգատրիէ մականուն՝ յայտնապէս նշանակէ զհամանուն տոհմ Թուրքմէնից, որք 'ի նուազել և 'ի բառնալ թագաւորութեան մերոց Ռուբինեանց՝ նուաճեցին զարևելեայ մասն աշխարհին, հանդերձ Մարաշաւ և Էլպիստանաւ, և հաստատեցին հզօր տէրութիւն, տարածելով զիշխանութիւն իւրեանց մինչև 'ի սահմանս Կեսարիոյ, դար և կէս տիրապետեալ, զդէմ ունելով այլոց համազգեն պետութեանց և Եգիպտացւոց իսկ, մինչև նուաճեցան 'ի բուռն զօրութենէ Սէլիմայ Ա. յամի 1515: Եւրոպացիք Ալիտուլի կամ Ալատուլի կոչէին զերկիր իշխանութեան նոցին, իսկ մերայինք՝ Տուլղատրցի ըզտոհմն. և յիշեն յամի 1465 զՀասան պէկ մինչև 'ի Վրաստան արշաւեալ. և զՇահսուար Ա., որ յամի 1467 « Եղեալ հակառակ Մուրայ սուլտանին և շատ աւեր էած » անոր աշխարհին. և շատ Թուրքման՝ զոր Ապաների » կոչէին, զամէնն քշեց, և բազում չարութիւն գործեաց և էառ զՎահկայն ... և հրկէզ արարեալ (զՍիս) » անցեալ գնաց և էառ զԱտանա, զՏարսոն », և այլն[1]: Ի սմանէ աւերեցան և ամայացան բազում բերդք, մենաստանք և եկեղեցիք. այլ և ինքն յետ ամաց երկուց (1469) անկեալ 'ի բուռն սուլտանին Եգիպտոսի՝ հանաւ 'ի կախաղան: Ցետ սպանման վերջին տիրապետին (Ալի պէկ), և բարձման պայազատութեան նոցին, 'ի նմին տոհմէ կարգեաց Սէլիմ՝ կուսակալ նահանգին, և ցելս ԺԶ դարու յիշին Զիւլգատրեանք: — Աւանն Գարս-պազար ունի՞ զտեղի հնոյ և ոչ աննշան քաղաքի, որպէս հաւաստեն նշխարք նորին, քարինք կճեայք, սիւնք և քովթարք և այլ մասունք, որք և յաճախ գտանին 'ի պեղելն սակաւ ինչ զգետինն, և աւերակ վանաց և փոքու եկեղեցւոյ փոխեցելոյ արդ 'ի մզկիթ, երկոքին ևս շինեալք 'ի մասանց հնագոյն շինուածոց. մենաստանն կամ տաճար 44 քայլ երկայն, 23 լայն է (ըստ Տէվլիսի), համակ տաշածոյ վիմօք այլևայլ մեծութեամբ. երկուստեք սրահք են, և բազում սրակամար դրունք մտից 'ի նոսին, և քառակուսի պատուհանք 'ի վերոյ: Մերձ սմին կայ և այլ շինուած մեծ զուգեալ հնագոյն մասամբք, մեծ և փոքր քարամբք, և սուր կամարօք. նաև յորմունս տանց և հասարակաց շինուածոց գտանին վէմք քանդակեալք, խարիսխք սեանց, տապանաքարք, արձանագիրք յունականք: Շուրջ զգաւթիւ տան կողմնակալին՝ 25 կամ 30 սիւնք կանգուն կան, այլ շատ կամ սակաւ խորտակեալք. Երևին և հետք հնոյ կամրջի 'ի վերայ գետոյն: Մեծ մասն բնակչաց աւանին մահմէտական է. 'ի սակաւ մերազգիս գոյին և իբր 20 նորադանդք[2] յամի 1875: —

Եօթն կամ ութ մղոնօք 'ի հարաւոյ Գարս-պազարի և նոյնչափ յելից Անաւարզայ՝ առ գետեզերբն (Ջահանայ) յաջմէն՝ նաւանցք են ընդ այն, և գեօղ մի Ջերքէզաց. Թուի և այլոց գեօղից և հանգրուանաց նորեկացս այսոցիկ բնակչաց Կիլիկիոյ՝ լինել 'ի նոյն կողմանս: Մերձ 'ի գիւղս յայս՝ առ նովին եզերբ գետոյն՝ է գեօղաւանն, 50 տամբք, և համանուն հին բերդ՝ Հէմիդիէ գալէսի կոչեցեալ այժմիկ, 'ի գագաթան կոնաձև քարուտ լերին. որ է անշուշտ նշանաւոր բերդն Ամուտա. զի վըկայեն և Արաբացի պատմիչք լինել զայն յանցս անդ գետոյն Ջահանայ՝ յաջմէն՝ 'ի հիւսիսոյ. նոյնպէս և Վիլլեպրանտ այցելուն Լևոնի Մեծի՝ զգետն առ ստորոտով բերդին Ամուդանայ ասէ. որոց ոչ եղեալ միտ Լանկլուայ ճգնի նոյնացուցանել զԱմուտայն ընդ Թումլոյ-գալէ բերդի, որ 'ի Հր. Մ. Անաւարզայ կայ 'ի բացավայրի, և ոչ սակաւ հեռի 'ի գետոյ. բայց սխալ գրչագրի թուի կամ ընթերցողի՝ բան յիշեալ Գերմանացի ուղևորին, երկու մղոն հեռի լինել բերդին՝ յԱնաւարզայ, զոր անկ էր երկոտասան գրել[3]: Այս դրից 'ի դէպ գայ և

1 Ժամանակագրութիւն:
2 Տէվլիս, 154-6:
3 Թերևս յօրինակի հեղինակին XII գրեալ էր, և առանց առաջնոյ թուանշանին՝ II միայն ընթերցեալ և տպագրեալ է:

երկրակալութիւն Թորոսի Բ'ի դարձին 'ի գերութենէն. զի յԱսորւոց կողմանց մտեալ, և գտեալ զեղբայր իւր Ստեփանէ, նախ քան զայլ բերդս՝ զսա նուաճեաց, և ապա զՎահկայն և զայլս.

« Նախ զԱմուտայն եղեն առեալ,
Ապա նոխա այլոց տիրեալ ».

ըստ չափաբանին Վահրամայ. Նոյնպէս սուեն և այլք, և ընդ առաջինս 'ի գրաւեալ բերդից յիշեն զՍիմանակլայ և զԱռիւծ բերդ։ Վրիպի պատմիչ մեր Այրիվանեցի 'ի ժամանակագրութեանն, Ա Թորոսի ընծայելով զգործս Բին, թէ և առուգիւ նշանակէ՝ « Թորոս էառ զԱմուտայն, » և սկսաւ զօրանալ »։ — Յելս ԺԲ դարու Սիմոն ոմն էր տէր բերդին[1], առ թագաւորութեամբ Լեւոնի։ Սա յամի 1212 յամսեան ապրիլի, պարգեւագրով շնորհեաց զբերդն՝ հանդերձ այլովք եւս կալուածովք գիւղից և ագարակաց՝ սիրեցելոց իւրոց Տեւտոնեան ասպետաց կամ Ալամանաց, իբրու հանդոյն Մակաբայեցւոց մրցողաց 'ի վերայ նորոյ Իսրայելի. և յայտ լինի 'ի գրոյն՝ զի էր և գիւղ մի առ ստորոտով բերդին. Et casale inferius sibi adherens nominatum. և զսահմանն սկսանի նշանակել 'ի Սիմանակլայ կուսէ, որ է յարեւմտից, մինչև ցհին ագուգայն կամ ջրբաշխն (adaquarium), որպէս թուի՝ որ իջ 'ի մեծ ագուգայից Անազարբայ. « ուր են, ասէ, երկու » ծառք ուռենիք, և արդ լճացեալ է տեղին ». անտի ձգի սահմանն ցհրուանդան քարաժեռի առ գեղջ երկրին Աչիդու?, յորմէ՝ 'ի վեր ամբառնայ մինչև 'ի Գաւնմաստա. ընդ մէջ սորա և Ամուտայ՝ է և այլ անջրպետ, փոս կամ խորափ (cava), ուր և ծառ փշակաղնի, Chaisne spinosa[2], և Գայլոտ (Chalot) վանքն, և ագարակ այգւոյ Մխքայելի, (թուի իշխան ումն), մինչև 'ի հասարակաց ճանապարհն։ Յայլմէ կողմանէ ձգի սահմանն յարոտս հովուաց, մինչև 'ի բլուրն՝ ուր երկու վայրի մորենիք են և թթենի մի. աստի դառնայ սահմանն մինչև 'ի գեօղն Դակի կամ Տաճիկ (Dagie) և մինչև 'ի Ժամկա կամ Ծամկա (Zamga). անտի մինչև 'ի լճակն Եղիայ և Յովհաննու, և ցփոսն որ ընդ սա և ընդ Հառամ։ Զայս պարգև Լեւոնի վաւերացոյց և հաստատեաց կոնդակաւ՝ քահանայապետն Իննովկենտ Գ, 'ի 27 ամսեան փետրուարի յաջորդ տարւոյ (1213)։ Վերոյիշեալ ազնուազարմն Վիլեպրանտ Օլտէնպուրկեան, որ յետ կալոյ ամսօրեայ աւուրս յարքունիս Լեւոնի՝ եկն և եկաց և առ Տեւտոնեանս յԱմուտա (ad Amodanam կամ Adamodanam), ասէ զարմանալի խմն և վասն գետոյն (Ջահանայ, առանց յիշելոյ զանունն). զի ուժգին խոխոջանօք իջեալ 'ի լերանց Հայոց և մերձակայից՝ քերէ զառ ստորոտով բերդիս, և զաւուրս եօթն (յառաջ և յետ Ծաղկազարդին) արձակէ յականէն բազմութիւն ձկանց բաւական 'ի կերակուր ամենայն զաւառին, բարեխօսութեամբ Ս. Յովհաննու Մկրտչի։ — Աւելի քան զկէս դար մնաց Ամուտա 'ի ձեռս ասպետացդ Տեւտոնաց, որպէս և վկայէ վաւերական մի Գուլիէլմոսի պատրիարքի Երուսաղէմի, ընդօրինակելով նորա և զողջոյն պարգևագիրն Լեւոնի (յետ 1263 ամի), և յիշելով զոսկի կնիք նորին։

Բայց յետ սակաւ ամաց՝ 'ի մեծ և 'ի բազմաղէտ արշաւանին Եգիպտացւոց (1266), յետ գերութեան Լեւոնի Բ և սպանման եղբօր նորա Թորոսի 'ի մարտին Մառեայ, յառաջ խաղացեալ յաղթականացն և նուաճեալ զբերդօրայս որ յահեկէ կամ 'ի հարաւոյ Ջահանայ, անցին ընդ հուն նորին, և պաշարեցին զբերդս զայս, և 'ի նեղ արկեալ՝ առին, և յապաւինելոցն 'ի նմին 2200 ոգւոց՝ զարսն կոտորեցին, զկանայս և զմանկունս գերի վարեցին։ Ընդ նոյն հուն առ Ամուտաւ անցին նոքա և յամի 1298 յամսեան ապրիլի, 'ի նմանօրինակ ասպատակ և աւերած աշխարհին։ — Հանդէպ բերդին՝ այլ յահեկէ գետոյն սուեն զՀէմէտիէ գեօղ հայաբնակ՝ Ֆավա և Մանտրոյ, եկեալք այսր (յ'30 ապրիլի) յամի 1874, և վասն յորդութեան ջուրց գետոյն ոչ կարացեալ անցանել ընդ հունն, քննեցին զաւերակս բերդին, և զգեօղաւանն որ առ ստորոտովն, յարեւմտից կուսէ, զոր և վկայեն լինել մեծ, և զբերդն 'ի յետին կոհակս Անտիտաւրոսի, այլ յոյժ բարձրադիր, իբրև 'ի գագաթան լերին. զորով քերեալ Ջահանայ՝ խոտորի անդուստ ընդ Հս. Մ. և ապա դառնայ ընդ Հր. Մ։ Իսկ Տէվլիս որ ագաւ 'ի գեղջն՝ (18 մայիսի, 1875), յաջմէ գետոյն նշանակէ զնոյն և զբերդըն. և զյետինս ասէ չինուած ընդարձակ քառակուսի զղեկաւ և նոյնաձև աշտարակաւ 'ի Հր. Մ., իսկ 'ի Հս. Եւ. շրջափակ մի էր պարսպապատ, որակամար դրամբ և փոքր աշտարակաւ. կարի ափափայ և ուղղորդ երևէր կարմրագոյն քարաբլուր բերդին, այլ ոչ յոյժ բարձր, յորում և մարդք կանաչորակք։

Ի տեղեաց յիշատակելոց 'ի պարգևագրին Լեւոնի երկուք միայն թուին ինձ ծանօթք 'ի գրոյ, Սիմանակլայն և գիւղն Գայլոտ։ — Առաջինն մի 'ի չորից նախկի ստացուածոց Թորոսի Բ, որպէս նշանակեցաւ վերագոյն, մերձ էր յԱնաւարզա. զոր ոչ միայն պարգևագրին և Վիլեպրանտայ բանքն տան գուշակել, այլ յայտնի վկայութիւն յառաջ քան զնոցայն՝ (յամի 1179), ընծայէ մեծ Լամբրոնեցին Ներսէս. և ոչ միայն բերդ այլ և վանս ծանուցանէ զոլ առ նմին. « Եկեալ (ասէ վասն իւր) 'ի » վանսն՝ որ Սիմանակլա կոչի, հուպ Անարզաբայ, յո- » րում բազում գրեանք 'ի յունական գիրս աւանդեալ » է, մանրամասնաբար խուզեալ գտի զայս գիրս (կանո- » նաց Ս. Բենեդիկտոսի), և հրճուեալ 'ի վերայ անչափ » խնդութեամբ... առեալ գնացի 'ի հայրապետական » աթոռն », և այլն։ Նշանաւոր է կոչմամբ կամ անձամբ տէր բերդիս յաւուրս թագաւորութեան Լեւոնի, Սիրուհի, զի ըստ հայումս ցուցանէ տիկին իշխեցող, որպիսի ոչ ոք է այլ տեղեաց. բայց մարթի և ըստ արեւմտեայց պատւոյ կոչման ընթեռնուլ Սիր-Ուհի, որպէս Սիր-Ատանն և այլք, սակայն և յայսմ երկբայելի մնայ Ուհի անունն։ Լաւ է 'ի պատմութեան անուն տեղւոյս դար մի ողջոյն, և դարձեալ իբրև լռելեայն յիշի յելս ԺԳ և 'ի սկիզբն ԺԴ դարու տիրող նորին Հեթում՝ որդի Օշինի Լամբրոնեցւոյ՝ մարաջախտն Հայոց։ — Անունն և գիւտ յունական մասնից 'ի մենաստանի նորին՝ տան գուշակել 'ի Յունաց նախ քան զտիրապետութիւն մերս.

[1] Ըստ Սմբատայ. այլ ոչ յիշի յարքունի պատմչէն մերմէ։

[2] Այսպէս գրեալ է անուն ծառոյն, կէս փռանկ կէս լատին։

յոյս՝ հիմնեալ երկոցուն ևս, վանացն և բերդին։ Լատին թարգմանող պարգևագրին Լեւոնի զհայերէն հոլովականն Սիմանակլայ անուան, և զյօդն Ը՞ ուղղական համարեալ՝ գրէ նոյնպէս Սիմանակլային, a parte Simanaglaïn։

Երկրորդ տեղին Գալոտ (Chalot) վանք՝ թուի ինձ ընթեռնլի Գայլոտ, և նոյն գոլ ընդ Գալու վանս կամ Գալու անապատ, զոր գտանեմ 'ի յիշատակարանս երկուց Մանրուսումն երգարանաց, գրելոց յամս 1325 և 1336, 'ի Սիմէոնէ քահանայէ, 'ի սուրբ և «յաստուածաբնակ անապատս, որ կոչի Գալու, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, և այլ սրբոցս՝ որք աստ». զմին վանն հոգևոր եղբօր իւրոյ Յովհաննիսի գրքակազմի, ընդ որում յիշէ և զԱւգլդոյ և զփոքր Ստեփանոս դպիր. զմիւսն «'ի խնդրոյ դեռաբուսիկ և պատուական հոգևոր եղբօր» Զաքարիայի։ Եւ ձև գրութեան յիշատակարանին է այս.

49. Մանրուսմունք գրեալ 'ի Գալու վանս.

կազմող գրոցն կոչի Խաչատուր դպիր Երուսաղեմացի, նկարիչն՝ Յակոբ դպիր, որ և գրէ այսպէս.

50. Ձեռագիր Յակոբայ դպրի Նկարչի.

78. Այլ ամենայն սահմանավայրք յիշեալք 'ի պարգևագրին Լեւոնի[1] իսպառ անծանօթք են, և անուանքն իսկ երկբայելիք. նոյնպէս և այլ գեօղք և վիճակք նոցին զորս ընդ Ամուտայ պարգևեաց սպետացն Տևտոնաց, և հաւանելի է թէ չէին հեռիք 'ի բերդէ անտի մեծէ։ Եւ են ըստ լատին գրուածոյն, Սեսպին կամ Սելպին գիւղ (Sespin կամ Selpin), և սահմանք նորին Պաարի ? (Baari), մինչև 'ի խաչ մի և 'ի փոսն և 'ի թիլն Սապոյ (ad turonum de Sabuhe), և ցագարակն Բեզեկի կամ Պժեկի ?, (de Bezequi). յայլ կողմն Աբեդ (Abed), և արաբանունն Ռաս-էլ-այն, որ նշանակէ աղբերակն. ընդ մէջ սոցին և գեղջն կայր սահմանաքար սեաւ և Որջ աղուեսու (Pertusium vulpis), մինչև ցագարակն (curba) Յովհաննու Թուրքի. անտի մինչև 'ի թիլն կամ 'ի կոնդն Մոկոն և 'ի Յուտապն։ Ի կողմանէ Ալասինեց ? գնայր սահմանն մինչև յերկճիղ թթենին և 'ի Ջահան գետ, և յեկեղեցին Յուտապայ, և 'ի կոնդն կամ 'ի տափակ բլուրն (turonus), և 'ի Սեաւ քարն, և 'ի լճակն՝ ուր էր տուն Յովհաննու Կորդին կամ Քրդին (Johannis Cordin), և 'ի խաչ-

1 Հին պատճէն պարգևագրիս Լեւոնի՝ պահի յարքունի դիւանս Պեռլինու, ուր փոխադրեցան դիւանք կարգին Տևտոնաց. միւս ևս պատճէն հին գտանի 'ի դիւանս Վենետկոյ (Pacta Secreta, Senato V. C.), 'ի կոնդակի Գուլիելմոսի պատրիարքի Երուսաղեմի (յամս 1263-70), որ 'ի բնագրէն Լեւոնի գաղափարէ զայն, և վկայէ տեսեալ անեղծ զնոյն, և զոսկի կնիքն՝ պատկերաւ թագաւորին, (յոր և նման այնմ՝ զոր կայ և մեզ յանդիման առնել այլուր). այսպէս գրելով. Notum facimus universis, quod nos vidimus et inspeximus diligenter *Privilegium* Domini *Leonis* Serenissimi Regis Armenie, vera bulla aurea pendenti Sigillum, non abolitum, non cancellatum, non rasum, nec in aliqua parte sui viciatum. Bulle vero talis erat aspectus: ab una parte ymago regia sedens super solium regale, habens in caput diadema, in medio signatum signo Crucis, et in manu dextra tenens sceptrum, et in sinistra lilium: ab parte vero altera similitudo leonis coronati, qui quasi dextero pede elevato lignum Crucis tenebat: circumscripto autem ex uterque parte scripta erat, ut putamus, literis armenicis. Թողեալ զսկիզբն և զվերջ պարգևագրին՝ զմիջին մասն որ ճահագոյն է առ տեղագրութեանս՝ ողջոյն ընդօրինակեմք աստէն, նշանակելով և զզանազանութիւնս ինչ երկոցուն պատճէնիցն յիշեցելոց, որոց երկրորդն (վենետկեանն) չէր ծանուցեալ 'ի Լանկլուայէ՝ 'ի հրատարակելն զթուղթս թագաւորաց Ռուբինեանց՝ 'ի մերումս տպագրատան։

...Dono et concedo a modo in perpetuum... In primis, famosum castellum Amudam nomine, et casale inferius sibi adherens nominatum, cum pertinenciis et divisionibus ipsius signatis in hunc modum: A parte *Simanaglaïn* tendit usque ad antiquum *adaquarium*, ubi duo sunt arbores salice et modo factus est laccus; dehinc usque rostrum de rocha media juxta gastinam que est de territorio *Adidy*. A gastina illa superius ascenditur usque ad *Quilli*, quod dicitur latine meta de *Gammassa*. Alia divisio inter Gammassa et Amudayn tendit ad cavam, ubi est arbor dicta *chaisne-spinosa* et abbacia *Chalot* et agger vinee de *Mechale*, et extenditur meta usque viam. Alia divisio inter pastores et Amidain tendit usque ad collem, ante quem collem, sunt duo rubi salvatici et arbor morarius; de hinc tendit usque ad gastinam dictam *Dagie* et extenditur usque ad Zamga [1]; de hinc usque ad lacum *Helia et Ioh*; et inter Ioh. et *Ramam* est quedam cava divisa. Item aliud casale nomine *Selpin* [2], cum pertinenciis et divisionibus ipsius signatis. A parte Baari extenditur usque ad crucem; de hinc usque ad cavam et usque ad turonum de *Sabuhe* et usque ad agger de *Bezequi*. Inter Selpin [3] et *Baari* et *Abedi* et *Rasel-aïn* est divisio quedam, *Petra* scilicet *nigra* et *Pertusum vulpis*, et extenditur usque ad curbam Iohannis Turci ubi est gastina; de hinc usque ad curbam de *Moqun* et usque ad *Iudapus*. Hec infra situm est ipsum casale Sespin. Ex parte *Alasines* [4] extenditur usque ad arborem morarium furcatam, et usque ad flumen Iohan et ad jungum (?) *den Dieu*, et ad ecclesiam de Judapus, et ad turonum platum et Petram nigram, et fractum arvoltum et usque ad laccum, ubi fuit domus Iohannis Cordin et viam cruciatam, ubi est crux de petra. Hinc est recta via de Amudain ad *Traccie* et postea ad flumen. — Item aliud casale nomine *Buquequia* [5], cum pertinenciis et divisionibus suis [6] signatis, sicut dominus Michael ipsum tenuit. Ejusdem et Sespin territorium jungitur. — Item in territorio Meloni, aliud casale nomine *Cumbethfor*, cum pertinenciis et divisionibus ipsius signatis. A parte orientis extenditur sicut

ուղին՝ ուր խաչ քարեղէն, և տանէր ուղիղ յԱմուտա և 'ի Տրակիկ? Tracic. — Միւս պարգևեալ գիւղն կոչի Պուկեկիա? (Buquequia) կամ Պուկոնա (Bucona, Buchona), որոյ տէր էր երբեմն Միքայէլ ոմն։ Երկու Միքայէլք բերդատեարք յիշին 'ի մեծահանդէս թագաւոր-օծման Լևոնի, սակայն բերդք նոցին գուշակին յարևմտակողմն Կիլիկիոյ լինել, քան 'ի բաց հեռի յայս կողմանց։ Իսկ 'ի սահմանաց տեղեացդ յիշատակելոց՝ մերձագոյն անուամբ և դասակարգաւ բերդորէիցն՝ Յուտապն, Judapus, թուի Կուտաֆ բերդ, որ յետ Սիմանակլայ ընդ մէջ Անէոյ և Ընկուզուտի դասի, և որոյ տէր էր Ապլղարիպ մարաջախտ Հայոց՝ 'ի նախայիշեալ հանդիսին, և եկեղեցի տեղւոյն յիշի 'ի պարգևագրին. յայտ ուրեմն զի մեծ և նշանաւոր էր վայրն. առ Ամբատայ՝ վրիպակաւ կարծեմ Կոււտ գրի բերդս այս։ Նոյնպէս և Turonus de Sabuhe հաւաստագոյն ևս է բերդն Թլսապոյ, այսինքն Թիլ-Սապոյ (Շապհոյ?), որ 'ի դասակարգի բերդորէից դնի անընդմէջ յետ Թլին՝ (այսինքն է Թիլն Համտընոյ). առ Ամբատայ պատմչի (ըստ տպագրելոյն) Թլպսպոյ գրեալ է բերդս, այլ ընտիր օրինակ պատմչին մերոյ ունի Թըլըպոյ, և տէր նորին նշանակի Թորոս. բայց այլ ուրեք բնաւ ոչ գտի զանուն տեղւոյս 'ի գիրս։ Լատին թարգմանիչ՝ արքունի պարգևագրին հաւաստէ՝ զի turonus թարգմանէ զբնական դիրս՝ ըստ հայումս կամ ըստ Արաբաց Թիլ կոչեցեալս, որ են բլուրք կամ հողաբլուրք[1]։

Բացագոյն յարևելակողմն Ամուտայ չորս կամ հինգ մղոնօք, 'ի ստորոտս լերանց առ գետեզերբն՝ ամբառնայ կիսաւեր բերդն Պուտրուն կամ Պուտրում գայլեաց կոչեցեալ, յոստ մի այլատարազ բարձր քարաժեռի, զոր փաւանկ այցելուք վայրացն՝ նմանեցուցանեն St.-Michel d'Aiguille կոչեցեալ սարի՝ մերձ 'ի Բիւի (Puy) յերկրի իւրեանց։ — Առ ստորոտով լերինն դնի ամայացեալ գեօղն, անշուշտ կոչեցեալն Պոտռաւամ 'ի յիշատակարանի մաշտոցի գրելոյ յամի 1338, 'ի մերձաւոր Ս. Ռոմանոս անապատի (տես յէջ 203), զորս ոչ գտի այլ ուրեք 'ի գիրս յիշեցեալ։ Յաւերական երևին ոչ սակաւ մնացորդք վաղեմի հոյակապ շինուածոց. որպէս, շիրիմք սիւնակապք և բազմազրուագք՝ հանգոյնք շիրմաց Խաւրիոյ, և այլ ևս մանր գերեզմանք, ևս և վիմափորք յոլով, 'ի հարաւային դիմի քարալերին, պէսպէս ձևով. այլ վեր 'ի վայր խուզեալք և խանգարեալք։ Նմանութիւն շինուածոցն ընդ Պոմպէուպօլսոյն ցուցանէ յ'Բ դարու Քրիստոսի շինեալ սոցին, և յետոյ նորոգեալ և յաւելեալ 'ի քրիստոնէից. նման նորայումն են և 'ի սմա երկկարգեան շարք սեանց՝ 'ի յատակէ քարալերին գրեաթէ ցդագաթն և 'ի ստորոտս բերդին. առ որով 'ի հիւսիսոյ կուսէ կանգուն կան տակաւին երկու սիւնք, և հինգ ևս կիսամանեայք. 'ի միում յերկոցուն անտի կայ և պատուանդան բառնալի անդրւոյ. 'ի հարաւոյ կողմանէ ութ սիւնք կան կանգունք, և երկուք անխոյակք. այլք ամենայն՝ որ չափ որ սակաւ խորտակեալք են։ Այլևայլ ազգք են քարանցն, բայց ոչ կճեայք, և ոչ միաստանիք, այլ 2 կամ 3 կամ 4 կտորովք, կորնթացի ոճով, ոչ բազմազարդ, իբր 20' բարձրութեամբ և 2' 1/2 տրամագծաւ. 16 քայլ տարանջատ զոլով երկոցուն կարգացն, որոց երկայնութիւն ձգի իբրև ընդ 290 Ք. և մէն կարգի 78 կամ 80 սիւնք թուին. յերկոսին ծագսն ('ի կատար և 'ի ստորոտ քարալերին) են մէն մի շինուածք, զարդիս դերբուկք ևեթ. յայտ է թէ վերինն դղեակ էր, որոյ երևի և քառակուսի հիմն յարկի բազում դրամբք և շուրջ սեամբք։ Ի հարաւոյ կուսէ նորին կայ եկեղեցի աւերակ եռակամար պատուհանօք, բազմազրուագ քանդակօք՝ արտաքուստ խորանի տաճարին. յարևելից եկեղեցւոյն կամարաբարձ շինուած համէական՝ յաղիւսոյ և 'ի քարէ։ Իբրև 180 Ք. 'ի հարաւոյ սորին երևին այլ եկեղեցի. և սիւնաշարք կիսով անհետացեալք։ Յարևելեան ծայր քաղաքին է թատրն ընդարձակ, յորում երևին 14 կարգք նստարանաց։ Ի հարաւոյ թատերն իբր 140 Ք. բացագոյն՝ երևին նշմարք բաղանեաց և կռուարանի։ Մի միայն կիսատ արձանագիր յոյն գտեալ՝ ոչ յայտնեաց զանուն քաղաքին։ Ոչ քննեցաւ և բերդն, զոր Հայոց՝ թէ ոչ Յուստինիանու՝ դաստակերտ զոլ համարի Տէվիս՝ քննեալ 'ի ստորուստ, դեղին և գորշագոյն կոփածոյ քարամբք հին շինուածոց քաղաքին, կառուցեալ 'ի գահաւանդ մի մերձակայ լերին, յերից կողմանց վախուտ յոյժ, չորրորդն կորեալ և անջատ 'ի լեռնէն. բոլորշի աշտարակ մի 'ի Հր. Արև. կողման կարկառի 'ի վերայ սիւնաշարիցն, յորում կողման և դուռն էր բերդին, այլ անմատչելի թուի մարդոյ, թող թէ ձիոյ։ — Ընդ մէջ Պուտրում բերդի և Գարսպազարի նշանակին գեօղքն Վայվայ, Նագըր և Պուգ-գույու, յորում ըստ նշանակութեանն (Սառնահոր) է ջրհոր մի գեղեցիկ քաղցր ջրոյ. և Օրթա օղլու գեօղ, ժամաւ ևեթ հեռի 'ի Հր. Մ. Գարս-պազարի։ Ընդ մէջ երկոցուն յետին յիշեալ գիւղից թուի և անուանեալն Խնոայ։

79. Միջոց երկրին որ 'ի կողմանց անտի Գարս-պազարայ ձգի ընդ արևելս ցսահմանս Մարաշոյ, և 'ի հարաւոյ կոյ Ջեթունի և Կապանի, ոչ գիտեմ որում վիճակի պատշաճիցի, զի և գրեաթէ իսպառ անծանօթ էր ուղեւորաց. և յետ տեղագրելոյ զմերձաւոր սահմանսն՝ հանդիպեալ իմ ուղեգրութեան Տէվիսայ, (որ յերթալն

vadit via usque ad petram inter Cumbethfor et *Telimec*, et sunt infra petre pro metis fixe et subter carbones; de hinc extenditur usque ad metas petrarum fixas ex parte *Vancum* [7] et carbones subter; a parte occidentis inter Cumbethfor et casale dictum *Belegiunos* [8], quod habitant villani de Arench et est *Sancte Marie de Turri*, sunt mete petrarum fixe et subter carbones; de hinc extenditur usque ad coloumpnam marmoream. A parte septemtrionis, versus *Casseriam* sunt mete fixe et subter carbones et vadit usque ad turonum. A meridie, extenditur usque ad metas de *Bagnigun*, ubi crux est posita et usque ad rocham, et infra sunt petre fixe et carbones subter. A parte *Abraainain* et Casserie sunt petre fixe et carbones subter, et in medio petrarum fixarum est crux de petra. — Item aliud casale nomine *Ayun* cum pertinenciis et divisionibus ipsius signatis. A parte *Calasie*, est crux de petra et carbones subter, supra viam que ducit ad Vancun. A parte orientis, extenditur ad Pertusum vulpis, et est ibi crux de petra : de hinc extenditur usque ad ovile et in medio sunt mete de petra quinque et carbones subter. A parte Vangum [9], usque ad aliam crucem de petra que fixa est juxta gastinam supra viam, et in capite vie est alia petra et via ibi dividitur.

1. Zainga.
2. 3. Sespin.
4. Alasinez.
5. Buchequia.
6. Ipsius.
7. Vingun.
8. Beleguinos.
9. Nangum.

1 Գտանի բառդ turonus առ միջնադարեան գրիչս լատինացիս, զոր ստուգաբանէ Տիւքանժ՝ Շեղջաձև բլրակ։

'ի Մարաշայ 'ի Սիս զուգահեռական իմն ընթացիւք Ջահանայ՝ յաջմէն, նախ առաջին, կարծեմ, ծանօթս ինչ տայ զվայրացս), նորին գնացից և բանից հետևել արժան վարկայ։ Արդ անցեալ նորա ընդ կամուրջ Ջահանայ, (որ սակաւ մղոնաւք 'ի հիւսիսոյ կայ խառնրդոց Ագ-սու օժանդակի նորին յահեկէն, և փոքր մի աւելի հեռի 'ի Մարաշ քաղաքէ), կտրելով զՀամի-պէկ լերանց երկարաձիգ ողնայար՝ կոնատ գագաթամբք, մխի 'ի դաշտավայր թփուտ և գալարուտ, ուր և արտորայք հացաբերք, այլ սակաւաբնակք։ Թուի թէ և պար մի լերանց զուգահեռական Ջահանայ ձգիցի յարևելից յարևմուտս, 'ի հարաւոյ Ջեթունի. քանզի մերձ ընդ մերձ (ուրեք հազիւ 200 կամ 300 Ք. հեռիք 'ի միմեանց), փոսք 'ի հիւսիսոյ կուսէ գան թափին 'ի գետն, գործելով ձորակս անձուկս. այլ և հեղեղք սաստկահոսանք քերելով զերեաս բարձանց՝ ուստի իջանենն՝ վարեն 'ի նոյն զքերածն, և բազում ուրեք ճահիճս և եղտիւրս թողուն դժուարինս յանցուդարձ։ Զառաջինն 'ի գետակացս ուղևորն կոչէ Գիւրսուլու (Kursoulou), և առ խառնրդովն 'ի գետն մեծ՝ զՋայըրլան? չիֆթլիկ գիւղ հայաբնակ, ուր և ագաւն (3 մայիսի, 1875). 'ի սահմանս նորին ետես երամս կաքաւուց և կատու մի վայրի, և բազում երամս մանր վայրի հաւուց, վասն ջուրցն առատութեան։ Յոյժ աղքատք էին բնակիչք գեղջն, և սաղնջական նորա սաէր և ոչ սուրճ ըմպել։ Կամուրջ մի միակամար բարձր և լայն արկեալ է 'ի վերայ գետակին։ — Գրեաթէ 'ի խառնրդոց նորին ընդ Ջահանայ՝ սկսանի նրբուղի կածան զառ 'ի վեր ընդ Հաճիպէկ լեառն, ընդ որով կայ Տէօնկէլ, (Տունգալէ կամ Տունգալաղ ըստ Տէվլիսի) գեօղ և բերդ, և մերձ նմին հանգրուանն Գայա-շուլի? (Kaia-Scholi)։ Ափափայ և կոչկռուտ է կապան Հաճի-պէկ լերին, և խումբք բազմակատարք բրգաձև ցցուեալք, վասն որոյ դժուարին են ելևէջքն. բայց արևմտակողմն իջուցանէ 'ի հովիտ մի ծառաւէտ փոսկի փոքու իջելոյ յանջրպետէ նեղուցի կապանին։ Ահաւորագեղ և մեծատեսիլ են սահմանքն, այլ անմարդաբնակք. վասն որոյ հարկ եղև ուղևորին գիշերօթել (4 մայիսի, 1875) 'ի բացի՝ ընդ քուով քարանձաւի միոյ յանտառամիջի, առ եզեր Սարը-թօփրագ սու (Դեղնահող) փոսկի։ — Յարևելեան անկեան սորին և Ջահանայ՝ նշանակի հայանուն տեղին Անապատ, և փափագելի առնէ խնդրել անդէն զմի 'ի վանորէից մենակեցաց մերոց, գուցէ և զմի 'ի նշանաւորացն։ — Ճանապարհն որ 'ի գետակէ անտի տանի ընդ արևմուտս, եթէ արժան իցէ կոչել ճանապարհ, յոյժ առապար և լպրծուտ է ընդ քարինս ողորկս, և յետ այնր ընդ կաւուտ կակուղ երկիր՝ նոյնպէս դժուարագնալի. երևին 'ի ժայռսն և քարացեալ ժժմակք. և յառաջ ևս անցեալ՝ խանձաքարինք ողորկք ցրուեալք՝ գլխաչափ մեծութեամբ՝ պէսպէս գունովք։ Անդրագոյն ևս կանգնին պարք ապառաժ լեռնաբլրոց հերձոտեալք և պատառեալք յոյժ, այլ և ծածկեալք կաղնեօք և այլովք ծառովք, որպէս և հարթ գետինն թփովք և պաճարարոյծ տրօտիւք, այլ ոչ պտղաբերօք և արմտեօք, զորս մարթ էր ընծայել առատապէս՝ եթէ մշակեալ լինէր։ — Տասն մղոնաւ չափ յարևմտից Անապատի՝ գեօղ մի է Հայոց, խանգար կոչմամբ (յուղևորէն) Սուրանճի-ուշարա? (Sooranji-Oushara), 'ի կողս ապառաժ քարաբլրի, և յեզեր փոսկի փոքու։ Կանայք գեղջն՝ որք մատուցին ուղևորին հաց և կաթնեղէն, քաջակազմք և քաջատիպք թուեցան նմա, և թէպէտ աղքատք՝ այլ զարդարեալք արծաթեայ ապարանջանօք, ոսկեղրամ մազկապօք, արծաթեայ ճեղանակաւ ճակատուց և գունագոյն արծաթ-ճարմանդ մաշկեայ կամարագօտեաւ [1]։ — Սակաւուք հեռի փոսկ մի Անորըն-սու կոչեցեալ՝ թափի 'ի Ջահան. և հուպ 'ի գլուխ դաշտին երևին աւերակք եկեղեցւոյ փոքու և բերդի միոյ, զոր 'ի դէպ է կարծել Անդրունն հին, զոր խնդրեցաք 'ի սահմանս Հաճնայ (էջ 169)։ — Սակաւ մղոնօք ևս բացագոյն յարևմուտս՝ հզօրագոյն գետակ Գայիչ անուն՝ խաղայ 'ի գետն մեծ, ունելով յահեկէն (յարևելից) զԱձէմլի գիւղ, որոյ սահմանք օձուտ ասին. ուղևորն



51. Մաշտոց գրեալ 'ի Ս. Ռամանոս անապատի, յամի 1338։

1 The women of the hamlet gathered round us, and brought some milk and a little native braed. They were tall and good-looking, somewhat masculine in manner, and, in spite of their poverty, wore many ornaments, large silver armlets, gold coins hanging at their temples, and belts of bright red or yellow or green leather, studded with large knobbs of silver, and with a great silver clasp in front. Their hair was plaited in a number of tails, secured at the end vith silk, with small silver coins attached. — DAVIS, 143-4.

*անգղիացի ագաւ 'ի ամին (5-6 մայիս, 1875) 'ի տան Հայոց երից եղբարց կանամբեաց. մեծ էր քարաշէն և վայելուչ բնակարանն, բայց զերեսս ընդ հարաւակողմն ունելով ոչ ախորժելի յամարանի, սակայն գեղադիտակ տեսարանաւ ընդ կողմն Սեաւ Լերանց և մերձագունից Տիւրպիւն լերանց բարձանց (10,000')՝ որք յաշեկէ Ջահանայ՝ ընդ մէջ Նորին և Տէրվիշլի օժանդակի: Ցորմն տանն ագուցեալ էր վէմ մի բերեալ 'ի մերձաւոր գեղջէ յարևմտից կուսէ, յորում յոյն արձանագիր նուիրատուաց Ս. Յովհաննէս եկեղեցւոյ 'ի հնգետասաներորդի ամի կայսերութեան Մօրկայ, որ է 596 ամն Փրկչին, և յեպիսկոպոսութեան Պետրոսի (որո՞յ քաղաքի): — Ի հարաւոյ Աճէմլեայ յանկեան խառնրդոց Գայիշայ 'ի Ջահան՝ կայ Թախթալը գիւղ. յարևմտակողմն՝ Պահատուրլու գեօղ Թուրքմանաց. երեցուն ևս սահմանք մացառուտք են. իսկ անդրագոյն յարևմուտս երևին մեծամեծ ծառք անտառի. և 'ի միջի նոցին 'ի կուշտ մի լերանց աւերակ մեծի բերդի՝ զոր արդ Գուռմ-գալէ (Աւազաբերդ) կոչէին: — Կիսաժամաւ բացագոյն 'ի հիւսիսոյ Աճէմլեայ՝ կամուրջ կայ 'ի վերայ Գայիշայ՝ երկու մեծ և երկու փոքր սուր կամարօք: — Սակաւուք բացագոյն ընդ արևմուտս՝ վտակ մի ականակիտ (Աղար-Նարու? աու) խաղայ 'ի գետն 'ի միջոյ մեծամեծ կաղնեաց, ընդ որս աճեն աստանօր մրտենիք և պէսպէս Թուփք. ծաղկունք սակաւ, որպէս և միջատք և Թռչունք, առ նուազութեան ջրոյ: Աստի և անդր ցաւանն Գարս-պազար՝ սակաւ փարախաց ճանապարհ է: — Մղոնաւ ինչ բացագոյն 'ի կամրջէս՝ յաջմէ գետոյն՝ նշանակէ ուղևորն 'ի քարտին, զՆորբերդ, (Նեւբերդ, Newpet, գրելով), այլ ոչ յիշէ 'ի տեղագրութեանն, զի չէանց ընդ այն. և ոչ գիտեմ նոյն Թէ որիչ իցէ 'ի Նորբերդ գեղջէ, զոր ոմն 'ի մերայնոց 'ի վիճակի Սսոյ համարի, այլ ոմն 'ի Հաճնոյ, ուր և նշանակեցաք (յէջ 166). և զի նոյն յիշէր առ նմին և զԱճէմօղլու գիւղ հայաբնակ՝ իսկ աստ ցուցաւ Աճէմլի, Թուին նոյն լինել երկոքեան:*

---

## Բ. ՋԱԽԱԿՈՂՄՆ ՋԱՀԱՆ ԳԵՏՈՅ

### ԹԻԼ ՀԱՄՏԸՆՈՅ

80. *Միջոց երկրին որ յաշեկէ և 'ի հարաւոյ Ջահանայ, այլ և յարևմտից Նորին, (քանզի յետ ընդունելոյ զՍաւուրան և զգետն Սսոյ 'ի ներքոյ Անաւարզայ՝ յարևմտից կուսէ՝ 'ի հարաւ փոխէ զընթացսն), և 'ի հիւսիսոյ ոլորտից Ծոցոյն Հայոց, և յարևմտից Ամանոս լերանց, նշանաւոր եղեալ է 'ի պատմութեան մերում, որչափ ինչ հաւաստի 'ի ծանուցեալ անուանց բերդորէից և շինից, և 'ի ստէպ արշաւանաց և խլելոյ զնոսին Եգիպտացւոց, 'ի վերջնում դարու պայազատութեան մերոցս Թագաւորաց. այլ զարդիս անայցելու և աննշանակ մնացեալ 'ի գիտնականաց՝ ընդ շինիցն և բնական դիրք և կազմութիւն երկրին, արժանաւորք են քաջ խնամով քննութեան. նախ՝ զի ոչ վայրապար այնքան կարևոր չէնս և բոյնս ապաւինի հաստատեալ էր մերոցս անդ, և գրգռեալ զորկորուստ օտարաց. երկրորդ, զի և դոյզն յիշատակ օտարանշան ջերմըկին Հարունի՝ զոր յիշեցաք 'ի բնագրութեանն, խոստանայ պէսպէս երկրաբանական երևոյթս, մանաւանդ զի և չէ հեռի 'ի Տիւլտիւլ լերանց՝ ուր հետք հրաբղխի կարծին: — Զարդիս 'ի բնական մասանց՝ նշանակի միայն գետակ մի Աքսա անուն, իջեալ յԱմանոսեան լերանց և իբրև զուգահեռական ընթացիւք 'ի հարաւոյ Ջահանայ՝ յարևելից յարևմուտս գնալով և խառնելով 'ի նոյն, սակաւ փարսախօք 'ի ստորև խառնրդոց Սաւուրանի. Նոյն Թուի և կոչեցեալն Եալլուզ կամ Եարբուզ չայ՝ յանուն աւանի միոյ 'ի լերանցամէջս Ամանոսի, ընդ մէջ Օսմանիէի և Իսլահիէի, անցանելով ընդ կապանս լերանց՝ անուանեալս Պիլէկի և Տէմիրճի պէլ. իսկ 'ի շինից՝ հինգ կամ վեց գիւղատեղիք նշանակին առանց անուան, և երկու տեղիք աւերակաց:*

*Ըստ նախնեաց աւանդից հաւանական Թուի ինձ, որպէս և վերագոյն նշանակեցի, յայսմ միջոցի լինել Ամայք գաւառի, առ երի ունելով զյարանուն Ամանոս լերինս. բայց ստուգիւ երևի Թիլ կոչեցեալ, զէթ ըստ մասին, սակս մեծի աւանին կամ քաղաքին՝ որ կցորդաբար Համտուն անուան՝ Թիլ-Համտընոյ կոչի յաճախ, Թէ և բազում անգամ ևս զատուցեալ՝ միոյն կամ միւսով միայնով անուամբ, Թիլ կամ Համտուն, և չէնն և վիճակն. և էր հաւանօրէն յարևմտեան հիւսիսային մասին երկրիս՝ մերձ 'ի Ջահան, միով օթևանաւ տարակաց յԱնաւարզայ: Յարևելից սորին էր Համուս անուանի բերդ. 'ի հարաւակողմանն էին Հարուն քաղաք՝ կարծեմ դէպ յարևմուտս, իսկ ընդ արևելս հարաւոյ՝ հուշակաւոր բերդն Սարաւանի քար. ընդ սոսին՝ ոչ գիտեմ յորում կողման՝ խնդրելի են և Կովառա, և Նէճմիէ կամ Նէճիմ կամ Նուճէյմա բերդ. զյետինս՝ արաբացի պատմիչք միայն յիշեն, զուցէ այլայլելով զհայկական ինչ անուն. բայց աներկբայելի է լինելն յայսմ միջոցի: Հաւանօրէն, մանաւանդ Թէ ստուգիւ, էին առ սոքօք և*

այլ ոչ սակաւ բերդորայք. քանզի որպէս նշանակեսցի փոքր մի 'ի ստորեւ, պարգեւագիրն Հեթմոյ 'ի Նաշանգին Հարունի նշմարեցուցանէ եւ այլ եւս բերդս. որք եւ են (որչափ ինչ մարթ է ճշդել զլատինարէն անուանսն), Լաչիաճ բերդ, Մոտրիկ կամ Մոտրկայ բերդ, Սեւ աւերակ բերդ. առ որովք եւ գեօղք եւ վանք եւ հանգրուանք, որպէս տեսցի ընդ հուպ։ Վկայեն եւ պատմիչք՝ զի զայսր կողման Ջահանայ՝ հնգետասանիւ չափ բերդս առին Եգիպտացիք բռնութեամբ եւ դաշամբ 'ի Հայոց։ Ո՛ր ամրագոյն 'ի սոսին՝ ոչ գիտեմ, բայց ընդարձակագոյն տեղիք բնակութեան՝ յայտնին Հարունն եւ Համտունն։ Մի 'ի յետին տեղաքնին ուղեւորաց՝ յանձուկս Տէմրիճի կապանի յիշէ 'ի բարձու 4 կամ 500' վախուտ քարաբլրի՝ կիսաւեր բերդ մի, Քէօփէկ-գալէ (Շան բերդ) կոչեցեալ յայժմուս[1]։

Համտուն երեւի գլխաւոր եղեալ հանուրց բերդորէից կողմանս, եւ յառաջ քան զայլսն յիշատակի 'ի պատմութեան մերում։ Ըստ Նախակարգ կցորդ անուանն յայտնի կառուցեալ բերդ 'ի բլրի եւ աւան առ ստորոտովն, առ վտակի միոյ՝ ոչ հեռի 'ի Ջահանայ, ծանօթ Արաբացւոց, Թիլի-Համտունի, تل حمدون, կոչմամբ։ Ջառաջինն 'ի մերոցս՝ վասն Թորոսի Բ ասի յամի 1151 առեալ զԹիլ, եւ թերեւս 'ի նմին իսկ կալեալ զդուքսն Թումաս. զոր զերծուցանել փութացեալ միւս դուքսն եւ կողմնապահն Կիլիկիոյ՝ Անդրոնիկոս, չարաչար հարաւ 'ի նմանէ՝ առ Մսաւ. վասն որոյ յետ ամաց՝ կայսրն Մանուէլ ոչ կարելով 'ի ձեռն իւրայոցն թափել 'ի Թորոսէ զտեղին, երկիցս 'ի նոյն գրգռեաց զՄասուտ սուլտան Իկոնիոնի. այլ սորա զօրք կորակոր դարձեալք 'ի կողմանց Անտիոքայ՝ յամի 1154, յանցանելն ընդ այս սահման, մինչ Թորոսի այլուր գնացեալ էր 'ի պատերազմի, «Եկն ցաւ 'ի վերայ երիվարաց նոցա՝ զոր ինքեանք տապախ ասէին, յորոց յոլովք սատակեցան, քան թէ մնացին. եւ զայն տեսեալ մեծամեծացն Թուրքաց՝ ամենեքեան առհասարակ 'ի փախուստ դարձան... եւ բազումք 'ի նոցանէ զձիս երիվարացն եւ զջորւոցն հատանէին, ընկենլով զզէնս իւրեանց 'ի փախստեանն. եւ ինքեանք ընդ մացառուտ ձորս եւ ընդ դժնեայ վայրս հատեալ անցեալ գնացին մոլար ճանապարհաւ»։ «Եւ յորժամ դարձաւ (Թորոս) եւ զայն այնպէս ետես, գոհացան ամենեքեան զԱստուծոյ, որ առանց զինու եւ մարտի մարմնականի հալածեցան նոքա»։ Բայց յերկրորդում ամին (1155) ինքնին սուլտանն Մասուտ եկն զօրօք, «եւ միւսանգամ բանակեցան 'ի վերայ Թլին... եւ թէպէտ աւուրք ամարայնոյ էին, սակայն որոտմունք եւ հրաձգութիւնք աճագին լինէին յերկինս, եւ հողմն ուժգին՝ որ եւ զծառս խլէր յարմատոց. եւ յահաւոր բարկութենէն ամենեքեան պակուցեալ՝ յԱստուած ապաւինէին. եւ յետ երից աւուրց ողորմեցաւ Աստուած, եւ խաղաղացան երկինք եւ երկիր. եւ Մասուտ սուլտանն դարձաւ կրկին ամաչեցեալ 'ի տուն իւր[2]»։ — Ցետ երեսուն ամաց (1185) եղբօրորդի քաջին Թորոսի՝ Ռուբէն Բ՝ դաւաճանութեամբ ըմբռնեալ յԱնտիոքայ Բրնձէն, 'ի փրկանս անձին ընդ այլոց ինչ տեղեաց եթող 'ի նա եւ զԹիլ. այլ յետ սակաւուց դարձեալ անկաւ տեղին ընդ հզօր ձեռամբ եղբօր նորին՝ Լեւոնի Մեծի. առ որով՝ զառաջինն (1198) Ռոպերտ ոմն էր իշխան տեղւոյն (Ըաուպէրտ՝ ըստ Սմբատայ). յետոյ՝ թերեւս որդի նորա՝ նոյնպէս լատինանուն Ճօսլին՝ ջամբռլայն (Chambellan) Հայոց. զոր եւ յամի 1218 առաքեաց արքայն յաշխարհն Ունկարաց, ընդ թագաւորի նոցին Անդրէասայ, բերել զորդի նորա համանուն՝ 'ի փեսայութիւն դստեր իւրոյ Զապելի, (այլ ոչ յաջողեաց)։ Սակաւ ամօք յառաջ (1212) Վիլեպրանտ՝ 'ի դարձին 'ի Սսոյ եւ յԱմուտայ՝ եկն 'ի Թիլ, զոր Thila կոչէ եւ բերդ ամրաշէն[3] ազնուականի միոյ։ Պատմէ եւ զարմանալի ինչ՝ հանդոյն Մանտըվիլեան (յէջ 157), եթէ լեառն մի է առ Թլաւ յոյժ զուարճալի, լեառն Բաղդի անուանեալ[4]. եւ 'ի ճշմարտահաւատ վկայութենէ ստուգեալ, ասէ, զի որ ոք եօթնեակս վեց պահեալ պահօք եւ ապաշխարութեամբ, ապա հաղորդեալ 'ի սրբոյ խորհրդոյն՝ մտանէ 'ի լեառնն, աներկբայ բաղդի հասանէ, որպէս բազմաց հանդիպեալ է. յորոց սակի ինքնին ականատես եղեւ զօրականի միոյ յԱնտիոք, որոյ կատարեալ զօրինական սահմանն՝ գըտեալ էր անդ դաստառակ կամ անձեռոցիկ մի (quoddam manutergæum), յորմէ հայթհայթէր զամենայն պէտս սեղանոյ ընտանեաց իւրոց եւ հիւրոցն. «Երանի՛ թէ, յաւելու, եւ այսօր այսպիսի պաշտօնեայ լնոյր զպէտս չքաւոր կենաց[5]»։ — Ոչ միայն ամրոց՝ այլ եւ քաղաք պարտիզազարդ ասէ զԹիլ՝ Արաբ պատմիչն Ապուլֆէտա։ Ցամուր քաղաքի աստ ըմբռնեցաւ Անտիոքացին Ֆիլիպ՝ փեսայացեալն Զապելի (1225), եւ բերդարգելմեռաւ. բարեբաղդ ժառանգ նորին եւ արժանաւոր զուգակից Զապելի՝ Հեթում Ա, աստանօր կատարեաց զմի 'ի յետին մեծահանդէս տօնից եւ տարեկանաց իւրոց, յամի 1265, զտօն Ցայտնութեան Տեառն, մինչ գումարեալ էր անդ ընդ ազգայնոց իւրոց եւ զօրս բազումս՝ երթալ 'ի կոչ Թաթար զօրապետին 'ի կողմանս Եփրատայ՝ 'ի Պիր. այլ թէ Հեթմոյ ոչ՝ թերեւս Թլայ յետին եղեւ այն օր սըրբազան պայծառութեան եւ չքոյ. զի ամաւ յետոյ 'ի վատթարել բաղդի թագաւորին՝ գերութեամբ թագաժառանգ որդւոյն եւ սպանմամբ միւսոյն՝ ստիպեցաւ ընդ այլս եւ զԹիլ թողուլ 'ի յաղթողն, առ 'ի թափել զանդրանիկն իւր զԼեւոն եւ յապահովել զայլ սահմանս աշխարհին։

1 At about the middle of the Pass, on a rock with precipitous sides from 400 to 500 feet high, and cut off by deep gorges from the surrounding heights, was a ruined fort, Keupèk-Kalesi (Dog-Castle), perhaps one of the many robber holds destroyed by the government troops a few years ago. — Davis, 84.

2 Ի ԺԶ եւ 'ի ԻԵ կամ ԻԷ օրէ ամսոյ, ըստ Մատթ. Ուռհայեցւոյ, որ են 27 մայիսի եւ 5 կամ 7 յունիսի այնր տարւոյ, ՈԴ թուականի Հայոց. յառաջնումն՝ ասէ կարկուտ անհնարին եկեալ, յերկրորդումն՝ «խաւար անճաճանչ... եւ յամպոցն բախմանէ ընդ իրարս՝ որոտալով՝ որպէս լերինք կարծր եւ անդամանդեայք բախելով զմիմեանս, եւ հրաձգութիւնք կայծականց ունէր զծիր երկնից, ոչ գոլով տեղի յերկինս՝ որ ոչ ունէր զփայլատակունս հողմախառն։ Եւ ոմն էր բաւական հայել աչօք իւրովք յահաւոր դղրդմունսն որ լինէին անդադար»։

3 Venimus ad Thilam, quod est castrum bonum cujusdam nobilis. — Villebrand.

4 Quidam mons satis amænus, quem montem de Aventuris appellant.

5 Utinam etiam hujusmodi minister hodie vitæ succurreret indigentiæ !

*Սակայն յետոյ որդի նորա և Թոռունք՝ բազում անգամ կորզեցին զԹիլ և զնահանգս նորին յԵգիպտացւոց. բազում անգամ և սոքա մարտեան 'ի վերայ տեղւոյն և հանին 'ի Հայոց, որպէս յամս* 1273–75, 1278. *իսկ 'ի Թագաւորութեան Սմբատայ, յամի* 1294, *'ի մեծի արշաւանին, ըստ գրելոյ ժամանակագրին՝ «Մորցին էառ և » զկէս երկրին Կիլիկիոյ »: Ի դաշնադրութեան անդ Պնտուխտարայ ընդ Հեթմոյ, և յայլ նուագս՝ Եգիպտացւոց խնդիր էր գրաւել զարևելեան կողմն Կիլիկիոյ մինչև ցՋահան գետ. և 'ի յետնումս յիշեալ նուաճման՝ մնաց 'ի ձեռս նոցա ցամն* 1300. *յորում՝ 'ի խաղալ Ղազան Ղանի 'ի վերայ սուլտանին, Աւէն (կամ Հասան)-Տիմուր Կիւրճի ոմն՝ էր կուսակալ այսր մասին. և առեալ ընդ իւր, ըստ արաբացի պատմչաց, զիշխողն Հայոց (?) խոյս ետ 'ի Դամասկոս. յետ մեծի պատերազմին Հէմսայ և խորտակման Եգիպտացւոց՝ Հայք վերստին գրաւեցին զԹիլն Համտընոյ և զնահանգս նորին. վասն որոյ 'ի հեռանալ աչին Թաթարաց՝ դիմեցին Եգիպտացիք 'ի վրէժ. և զառաջինն* (1302) *ոչ յաջողեալ, յերկրորդումն նուագի* (1304) *պաշարեցին զբերդն, յոր ապաստանեալ էին բազումք 'ի մերձակայ սահմանաց, որք և ստիպեցան անձնատուր լինել (յ'17 յունիսի) պայմանադրութեամբ. և էին 'ի նոսին վեց իշխանք կամ բերդատեարք. որոց՝ ոչ կամեցաւ, ասեն պատմիչք Արաբաց, երաշխաւոր լինել Թագաւորն Հայոց, զի ինքնակամ դրժեալ էին դաշանցն և դադարեցուցեալ զհարկսն. վասն որոյ և զօրապետն, որ էր Նայիպն Հալպայ, ետ գլխատել զնոսա, ապրեցուցեալ միայն զմին՝* Ռոմանոս *կամ* Ռումակ *անուն, քանզի մոլիմացաւ. և էր նա տէր Համիայ (Համուս?) կամ Նէձիմայ բերդի, զի այլայլօրէն գրի կամ ընթերցեալ լինի անուն տեղւոյն՝ յարաբիկ ձեռագիրս: Սակայն և յետ այսորիկ, և Թուի ոչ անագան, անկեալ է Թիլ 'ի ձեռս Հայոց, և միւսանգամ եկեալ Եգիպտացւոց 'ի վերայ նորին՝ յամի մահուան Օշնի Թագաւորի, այն է* 1320, *բայց առումն ոչ յիշի. այլ զի 'ի նմին ամի 'ի Թագաւորել Դ Լեւոնի՝ վերստին կռեցան դաշինք հնգետասանամեայ հաշտութեան, հաւանօրէն պահանջեցաւ յԵգիպտացւոց և նահանգն Թլայ: Ի միւսում ևս դաշնադրութեան* 1337 *ամի՝ առ նովին Լեւոնիւ, յայտնապէս յիշի Թողուլ Հայոց զայս կողմն Ջահանայ յԵգիպտացիս, հնգեքումբք նախագրեալ բերդորէիւք և Այասաւ. Թէ և յայսմ ևս նուագի լռէ անուն Թլայ, որպէս և յայնմ հետէ իսպառ՝ 'ի պատմութեան մերում, ըստ իմս գիտութեան: Սակայն և յետ բարձման Թագաւորութեան մերոյս՝ չէն կայր տեղին, զի յիշէ և զբերդն և զպարիսպս աւանին և զպտորտէզսն՝ աշխարհագիրն Օսմանեանց ԺԷ դարու:*

**81.** Համուս *բերդ, որպէս նշանակեցաւ 'ի վերդ՝ էր յարևելակողմն Թլին Համտընոյ, և ընդ նմին Թուի նուաճեալ 'ի Թորոսէ Բ. զի, Թէպէտ և ասի յետոյ յամի* 1165 *Ցոյն դքսին Համուսի սպանեալ զՍտեփանէ, այլ արքունի պատմիչն գրէ. «Սպանաւ սա դաւով նենգութեան անօրէն տուկին Ցունաց՝ յաշխարհէն Կիլիկեցւոց՝ առջև Համուսին ». այլ Թէ անագան Թէ վաղ՝ նուաճեալ էր 'ի Հայոց, և յելս ԺԲ դարու բերդատէրն էր Արեւգոյն իշխան. յետ նորա յամի* 1259 *յիշի 'ի պատերազմին Մոնղասայ՝* Վահրամ *Համուսցին, փեսայ Սմբատայ գունդստապլի, վտանգեալ 'ի մարտին և ազատեալ 'ի քաջակորով աներոյն: Առաւ և խանգարեցաւ բերդս յԵգիպտացւոց՝ յամի* 1266. *և զոր ոչ կարացին նոքա եղծանել՝ յետ երից ամաց* (1269) *մեծ սասանութիւն զետնոյ կատարեաց. զի ընդ Սարաւանի և այլոց, «Նաև Համուսն անուանեալ՝ զմայր սիրելի որդւովք » և որ մերձ էին՝ կորոյս տարաժամ վախճանօք », որպէս գրէ ժամանակակից ոմն և ականատես. և յայնմ հետէ ոչ յիշի անուն նորին 'ի պատմութեան մերում, բայց Թուի հանգոյն այլոցն կարկատեալ և սորա, և յամի* 1337 *'ի Թիւ հնգեցուն բերդորէից պահանջեալ յԵգիպտացւոց: Սա Թուի և գրեալն յԱրաբացի պատմչաց Հումէյ–մաա, եԹէ ուղիղ ընԹեռնու գերմանացի պատմիչն (Վայլ):*

*Առաջին 'ի բերդորէից այտի և գլխաւոր 'ի ժամանակին և վաղագոյն ևս՝ էր* Հարուն, *կամ* Դղեակն Հարունի, *այլևայլ օրինակաւ՝* Haronia *կամ* Haronie, Aronie, Airone *գրեալ 'ի լատինն, 'ի հարաւային արևմտեան սահմանս հարաւոյ Ջահանայ, մերձ 'ի ճկեր և յԱյաս գաւառս. չինեալ և անուանեալ հաւանօրէն 'ի Հարուն-էլ-Ռէշիտ ամիրապետէ: Բերդատէր սորին յելս ԺԲ դարու կոչիւր* Լեւոն, *յետ նորա* Կօփրետ *կամ* Ճօֆրի, *և ապա յարքունիս գրաւեալ, որպէս և էր 'ի սկզբան Թագաւորութեանն Հեթմոյ: Սա՝ անդէն* (1236) *հաւանութեամբ նորապսակ ամուսնոյն՝ Զապելի դշխոյի, պարգևեաց՝ վաւերական հրովարտակաւ՝ զբերդաքաղաքն և զսահմանս նորին՝ Տևտոնեան ասպետաց, զորս տեսաք 'ի վեր անդր ընդունողս և Ամուտայ բերդի 'ի Լեւոնէ, և այլոց ևս գեօղից և չինից, վասն երախտեաց նոցին և խոստման պաշտպանելոյ զԹագաւորութիւն Հայոց. յոր սակս և Թագաւորն Հեթում և Թագուհին՝ իբրև եղբայր և քոյր՝ սերտ միաբանեալք ասեն ընդ նոսին, և տան նոցա զանուանի և զգեղեցիկ քաղաքն* Հարոնիա, *ամենայն սահմանօքն, որպէս ունէր երբեմն յիշեալն* Կօփրետ, *և աւանդեն 'ի ձեռս Հերմանայ կարգապետի, և Լիդդոլտ հրամանատարի* (Comendator) *ասպետաց կողմանցս:*

*Զրկեալք 'ի հայերէն բնագրէն՝ հրատարակեսցուք աստանօր զզուգաժամանակ լատին Թարգմանութիւնն, յեղլով զնոյն վերստին մերովանն 'ի մերս բարբառ, իբրև զմի 'ի սակաւուց մնացելոց արքունական հրովարտակաց տանս Սիսուանայ, և կարևոր տեղագրութեանն՝ վասն յիշատակի բազում գեօղից, ագարակաց, բերդից և վանաց, Թէ և յոյժ այլայլեալ և անծանօԹացեալ են անուանքն, բաց 'ի սակաւուց ոմանց. յաւելցուք և դոյզն ինչ ծանօԹուԹիւնս 'ի ստորև. կանխեալ ազդ առնել աստանօր, զի բնագիր ԹարգմանուԹեանն գտեալ 'ի դիւանս կարգին Ալամանաց 'ի Պեռլին՝ հրատարակեալ էր քան ամօք յառաջ առ մեզ՝ 'ի ձեռն Լանկլուայ՝ 'ի չորս այլոց հրովարտակաց. այլ արդ գտեալ այլ օրինակ հին 'ի դիւանս Վենետկոյ՝ կարևոր այլագրուԹեամբք, ըստ այնմ ուղղեցի կամ յաւելի ինչ ինչ ծանօԹուԹիւնս:*

*Հրովարտակ Հեթմոյ Ա, եւ Զապէլ Տիկնոջ, որով պարգեւեն զՀարուն Եղբարց Տանն Ալամանաց*[1]։

« Կամօք բարերարին Աստուծոյ Հօր և շնորհօք Տեառն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի, և հաճութեամբ Հոգւոյն Սրբոյ, ՀԵԹՈՒՄ Քրիստոսի Աստուծոյ հաւատարիմ Թագաւոր Հայոց, որդի արքայազարմն Կոստանդնի, և ԶԱՊԷԼ Թագուհի դուստր 'ի Քրիստոս հանգուցեալ Թագաւորին Լեւոնի, յայտ առնեմք ձեզ որ այժմուս էք և որք յետոյ գալոց. Զի տուաք, որպէս և խնդրեացն, աստուածարնակ տան Հիւրանոցին Ալամանաց, 'ի ձեռն սրբազան և բարեպաշտօն մայստերին[2] (կարգապետի) Եղբօր Հերմանի[3], և Աստուծոյ սիրելի քօմանտորին (հրամանատարին) Եղբօր Լիդդոլտի, զանուանի և զգեղանի քաղաքն Հարոնիա, շրջակայ սահմանօք նորին, յարակցօք և անջատելովք, որպէս ունէր երբեմն Պարոն Կաւփրետ (Ջօֆրի), յորժամ տիրէրն Հարոնիոյ. զորս յիշեսցուք մի ըստ միոջէ, վանօրէիւք, գիւղովք, ագարակօք, հողով և ջրով, աղօրեօք, գետնօք, լերամբք և բլրովք, և պտղաբեր հարթ վայրօք, և ամենայն պտղովք, կալուածովքն և ստացուածովք։ Քանզի տեսաք զսուրբ և զբարեկրօն տունն Հիւանդանոցին Ալամանաց՝ լցեալ և առաւելեալ ամենայն բարութեամբ, յամենայնի և ամենևին խաչազգեցեալ և զինեալ ընդդէմ թշնամեաց խաչին Քրիստոսի, և նովին յաղթող գտեալ հակառակացն 'ի պատերազմունս, և զարդարեալ և զօրացեալ 'ի սպասաւորութեան հիւանդաց, միշտ և հանապազ մատակարարելով տուրս տնանկաց. որք և զմեր թագաւորութիւնս ընկալան յիւրեանց եղբայր և 'ի քոյր։ Եւ արդ քանզի կցորդակիցք եղեաք, ոչ վայրապար սիրով՝ այլ ամենասերտ կապանօք, որպէս և խոստանան մեզ պահպանել և պաշտպանել զթագաւորութիւնս մեր՝ յամենայն կողմանց, իբրև եղբարք հարազատք և բարեկամք անբաժանելիք, ըստ հրամանի Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է սիրել զմիմեանս, և այնու լինել աշակերտս նորին. որպէս և եղբարք սրբոյ Տանն Ալամանաց լնուն զամենայն օրէնս գրեալս և զքրիստոնէականս, և փոխանակ անցաւոր կենացս ընտրեցին և գնեցին զանմահականն և զյաւիտենական արքայութիւն Աստուծոյ. որպէս և գրեալ է, թէ, « Ուր եսն եմ՝ անդ և պաշտօնեայն իմ եղիցի » . և դարձեալ, թէ, « Ուր իցեն երկուք կամ երեք ժողովեալ » յանուն իմ՝ անդ եմ ես 'ի մէջ նոցա ». Վասն այսորիկ

*De civitate Haronia cum suis pertinentiis, que dedit Domui (Teutonice) Eython, Rex Hermenie.*

Voluntate beneficii Dei Patris et gracia Domini nostri et Salvatoris (*a*) Jhesu Christi et beneplacito Sancti Spiritus, ego EYTHON, Christi Dei fidelis Rex Armenie, filius Costantini stirpis regie, et ELISABETH (*b*) Regina ejusdem filia quiescentis in Christo Leonis Regis. Notum facimus vobis, qui nunc estis et qui post futuri estis, quod dedimus, ut petiit, Dei habitaculo domui Hospitalis Alemannorum, per manus sancti et religiosi Magistri Fratris *Hermanni* et dilecti Dei Comendatoris Fratris *Lutoldi* (*c*), nominatam et speciosam civitatem *Haroniam* cum sui dispositione confinii, sicut est contiguum et separatum, secundum quod Dominus Gaufridus (*d*) habebat, quando Haronie dominus erat; quod nominamus singillatim cum abbaciis, casalibus, gastinis, terra, aqua, molendinis, prodiis, montibus, collibus et fructiferis planis, et omnibus fructibus et pertinentiis et possessionibus. Quia vidimus sanctam et religiosam Domum Hospitalis Alemannorum impletam et refertam omni bonitate in omnibus et per omnia cruce signatam et militantem contra inimicos crucis Christi, et per ipsum vincentem in adversarios in preliis, et ornatam et confortatam in servicio infirmorum, et semper sibi provident in dona pauperum, et receperunt nostrum regnum (*e*) in veram fraternitatem et sororitatem. Modo autem amplius conjuncti sumus, non ficto amore set verissimo vinculo, sicut confitentur nobis servare et tueri regnum nostrum ab omni parte, sicut veri fratres et inseparabiles amici, secundum mandatum Christi Dei nostri, quod est diligere invicem, et in hoc discipulos ejus fieri; sicut sancte Domus Alemannorum fratres perficiunt omnem legem scriptam et christianam, et pro transitoria vita voluerunt et emerunt immortalem et eternum regnum Dei, sicut scriptum est: « Ubi ego sum, illic et minister meus erit », et iterum: « Ubi duo vel tres congregati fuerint in nomine meo, ibi ego sum in medio eorum ». Propter hoc, sanctam domum istam Dei habitaculum appellamus et volumus ipsorum participes fieri in omnibus hiis bonis, et dedimus eisdem supra nominatam civitatem Haroniam cum terra sibi

1 Ի կռան վենետկեան պատճէնին գրեալ է՝ Rescriptum Privilegij Regis Armenie super bonis Baronie. այսինքն է, « Պատճէն Պարգեւատրէ Թագաւորին Հայոց վասն կալուածոց Պարոնութեանն ». բայց կարծեմ սխալ է յետին բառն Պարոնութիւն՝ փոխանակ Haronie Հարոնիոյ՝ գրելոյ։

2 Այսպէս փոխանակ բառիւք գրին պաշտօնեայք ասպետացն և յայլ հայերէն պարգեւագիրս, և առ այն ժամու պատմիչս մեր։

3 Hermann de Salza, Թուրինկիացի, չորրորդ կարգապետ էր Տեւտոնեան ասպետաց, և արդեամբք առաջին, բազում գործս արութեան և բարութեան կատարեալ յերեսնամեայ կարգապետութեանն, (1210-1239). յառաջին ամին (1212) եկեալ յԱնտիոք և 'ի Հայս՝ ընկալաւ 'ի Լեւոնէ Ա. 'ի պարգեւ՝ զԱմուտա բերդ, որպէս նշանակեցաք (յէջ 200), և 'ի յետին ամս (1236)՝ դարձեալ գալով 'ի Սիսուան՝ ընկալաւ 'ի Հեթմոյ զվիճակս Հարունի բերդի, որպէս ցուցանէ պարգեւագիրդ. բազում և այլ կալուածս ստացեալ էր յայլ և այլ կողմանս Ասորւոց երկրի, և հաստատեալ հրամանատարս ասպետաց կարգին իւրոյ անդ և յարեւմուտս. և 'ի պատուի մեծի էր յաչս Քահանայապետին Հռովմայ և կայսեր Փրեդերիկի Բ., և ջանայր հաշտութիւն առնել ընդ նոսա. վասն որոյ և զվերջին ամսն եկաց յԻտալիա և անդ մեռաւ, 'ի Սալեռնոյ քաղաքի։

a Յօրինակին Լանկլուայ կամ Պեռլինու պակասէր բառս et Salvatoris.

b Յօր. Լանկլուայ Ebelisabeth.

c Յօր. Լանկլուայ Littoldi.

d Լանկլուա Goufridus.

e Լանկլուա negocium.

զօւրբ զայս Տուն՝ աստուածարեալ կոչեցաք, և կամ եղև մեզ հաղորդակիցս լինել յամենայն բարիս Նոցին. (վասն որոյ և) տուաք Նոցա զվերոյիշեալ քաղաքն Հարոնիա, յարակից և հեռակաց Նորին երկրաւ, հանդերձ սահմանօքն, որպէս և վճռեալ տրամադրեալ է. զոր և յիշեցուք մի առ մի: Եւ են այսոքիկ. քաղաքն Հարոնիա և աղօրիք Նորին, վանքն Հովտին, վանքն Ս. Մամասայ, վանքն Սուկրի [1], գեօղն Լուլիան (կամ Լալիան), գեօղն Կոստինոց, գեօղն Կուստկընաի, գեօղն Կոսքինեայ, գեօղըն Գերրար, գեօղն Շակորին (կամ Կագորին) և աղօրիք Նորին, գեօղն Գենցեքիս (կամ Կենդեքիս), Աղեխմոյն [2], ագարակքն Ս. Դանիէլ, Դաւենիմ, Սաարկակ, Ս. Թորոս, Սեւաւերակ բերդ, Կեանք-բլակ, Մօտրիկ բերդ, Գընիկ, Հախուտակ՝ յորում են մշակք արքունիք և մշակ [3] մի Պարոն Միքայելի Անդրապլենց, և այլոց արքունի լինծարտից մշակք, և Պարոն Պաղտինի Ամիրենց. եթէ հաճոյ թուիցի Ֆրաթնուն (Եղբարցն) արձակել զմշակսն յերկիր իւրեանց, տացեն Նոցա ըստ յառաջագոյն սահմանելոցն, տալ զկէս հասիցն որ կոչի ըստ Հայոց Հընգեակ [4] Հարոնիոյ, և զմնացեալն՝ տեարց Նոցին. իսկ եթէ այր իւրաքանչիւր առցէ զմշակ իւր, և ելցէ 'ի տեղւոջէ իւրմէ, և մնայցեն տեղիքն համօրէն կահիւք իւրեանց, եղիցի երկիրն յիշխանութիւն Եղբարցն, քանզի ընդ սահմանաւ Նոցին է:

« Եւ արդ զքաղաքդ Նախասացեալ և զերկիրդ Նախանշանակեալ՝ զոր մի ըստ միոջէ յիշեցաք և սահմանօքն որոշեցաք, տուաք հրեշտակերամ եղբայրութեան Հիւանդանոցին Ալամանաց, մշտնջենաւոր և յարամնայ ժառանգութիւն, որոց են յայժմուս և որ յետոյ գալոցն են: Արդ մի՛ ոք իշխեսցէ յամենայն երկրիս Հայոց 'ի մերոց հպատակաց, ոչ մեծ և ոչ փոքր, Նեղել կամ ոյժ առնել սրբոյ Տանս և հոգևոր եղբայրութեանս, կամ զսահման Նոցին և զկալուածսն Նուազեցուցանել. այլ ըստ բարձր հրամանաց մերոց՝ Հիւանդանոցին Ալամանաց եղիցի իշխանութիւն 'ի վերայ Նախագրեալ և սահմանեալ երկրին: Յայս սակս տուաք զմեր պարգևական հրամանքս. և վասն առաւել հաստատութեան՝ թագաւորական ձեռնագրովս ստորագրեցաք, և ոսկի կնքով մերով կնքեցաք: — Գրեցաւ 'ի ԻԲ աւուր ամսեան յանուարի, 'ի թուականիս Հայոց ՈՁԵ, յ'Թ ընդիկտիոնի, ձեռամբ Մանուելի ջանցլերի [5] »:

contigua et separata, cum suo confinio, sicut dispositum est, et nunc recordamur per partes sigillatim: Civitatem Haroniam, cum molendinis, abbaciam Ovide, abbaciam Sancti Mamas, abbaciam Sougre, casale Lalyan (*a*), casale Costinos, casale Goustgenache (*b*), casale Gausquigne, casale Cherrare, casale Chacorim (*c*), cum suo molendino, casale Cainchequice (*d*), Aguechemoin; castine, Sanctum Danielem, Davenim, Saargague, Sanctum Thoros, Cievaverac Pirt, Quiang Thelague (*e*), Mautrigue Port, Guenecch, Hachoudage (*f*), in quo sunt regis rustici et unus rusticus domini Michælis d'Andraple, et alii regis ligiorum hominum rustici, et domini Baugdin (*g*) Emerance (*h*). Illos rusticos si volunt fratres dimittere in sua terra, dabunt sicut ante erat costitutum, ut darent medietatem redditum qui dicentur armenice *engague* Haronie, et cetera dominis suis. Sin autem accipiet unusquisque suos rusticos et exibit de suo loco (*i*), et remanebunt illa loca cum suis rebus integre, et erit terra in mandato fratrum, secundum quod est intra eorum confinium.

Igitur predictam civitatem et terram pretaxatam quam nominatim recolimus et per confinia distincximus, dedimus angelice legionis fraternitati Hospitali Alamannorum in perpetuam et permansuram hereditatem, qui nunc sunt et qui post futuri sunt. Non ergo habeat aliquis potestatem in tota regione Armenie de subditis nostris, neque magnus, neque parvus, sancte Domui et spirituali fraternitati, vim vel molestiam facere, neque de confinio, neque de pertinencia minuere; sed sit Hospitalis Alemannorum supranominate et distincte terre, auctoritas ex nostro magnifico mandato. Propter hoc, ergo dedimus nostrum gratuitum *Privilegium:* et ut majorem habeat firmitatem, manu regia subscripsimus et sigillavimus aureo sigillo nostro.

Datum januario mense, *xxªijª* die, anno Armenorum DCXLXXXV° (*k*), indictione *ixª*, per manus *Manuelis* Cancellarii.

1 Մարթ էր և Շուղր կարծել, բայց ոչ զանուանի տեղին և ըղվանոն՝ որ 'ի հարաւոյ Անտիոքայ է:

2 Քանզի Aguechemoin կամ Aguechemoim գրեալ է յօրինակսն, թերևս ընթեռնլի էր Աղուեսի-բոյն, և կարծել զանուանեալն և զթարգմանեալն՝ 'ի պարգևագրին Լևոնի (էջ 201) Pertusium vulpis, որ Նշանակէ Աղուեսու որջ կամ ծակ:

3 Լատինն rustici (եզականն rusticus) գրէ, որ հասարակօրէն Նշանակէ շինական կամ գեղջուկ. այլ թուի ինձ թէ իցեն անուանեալքն պատկանս 'ի միջին դարս և յ'աւատական վարչութիւնս, որք և 'ի մերային օրինագիրս յիշին, և են իբրև վարձուոր երկրագործք տերանց ագարակացն:

4 Սովորական հարկ երկրի զոր հարկէին հպատակք առ պետութիւնն՝ էր առ հարստութեամբ Սիսուանեայցս՝ հինգերորդ մասն հասից, վասն որոյ և հնգեակ կոչէր. որպէս և ասէն Սմբատ յՕրինագիրսն, ('ի Գլ. Ա). « Եւ է ըղորդ հարկուն սահմանն այս, որ զինչ « Աստուած տայ հարկավորին՝ 'ի հինգն մէկն է »: Լանկլուա՝ երկրայանօք իմաստասիրելով զբան հայ բնագրին [illegible] գրեալ կարծէ, իբր թէ Նշանակելով զեկամուտս կամ զհասս պետութեանն, revenus, rentes.

5 Այսպէս փռանկերէն (Chancelier) կոչէր յարքունիս թագաւորաց մերոց՝ քարտուղարն մեծ, որպէս և այլ անուանք պաշտամանց:

*a* Օր. Վենետ. Loulian.

*b* Յօր. Լանկլուայ պակասէ անունս Goustgenache.

*c* Յօր. Վենետ. Cachorim.

*d* Յօր. Վենետ. Cainthequece.

*e* Լանկլուա՝ Quiang, Telagre, Mautrigue, Port.

*f* Լանկլ. Hachoudagre.

*g* Լանկլ. Baudin.

*h* Վենետիկեանն՝ Hemarance.

*i* Լանկլ. exibit de loco.

*k* Ի թուանշանաց աւելորդ է երրորդն (X), որ և 'ի վենետիկեան օրինակին այլանձև կամ աղաւաղ իմն է Նշանակեալ. իսկ Լանկլուայի գրածն կամ ընթերցուածն՝ կէս փակ և կէս բաց, DC et quadragesimo octagesimo V°, անհեդեդ է և անիմաստ, զի ընթերցեալ լինի 600 և 40 և 85:

Մինչ կանխաւ դեռ ևս ընդ իշխանութեամբ Բրընձաց Անտիոքու էին կողմանքս, զմի 'ի գեօղից՝ Churar գրեալ 'ի պարգեւագրի իւրեանց, (և Թուի գրեալն 'ի պարգևագրին Հեթմոյ Cherrar), յամս 1149 և 1163, նոյնպէս տուեալ էին 'ի պարգև Հիւրընկալ ասպետաց. ընդ նմին և այլ հանգրուան մի Ակամիր (Agamir) անուն հանդէպ Թլայ, և զգեօղս Գադիր և Ուբլի?, հանդերձ սահմանօք նոցին [1]: Եւ՝ զի ընդ Թլայ, Հարունի և Մամեստիոյ յիշի 'ի պարգևագրի Բրնձին և Կափարդան վիճակ և Մուզերատ [2] գեօղ 'ի նմին, 'ի դէպ է 'ի սահմանս նոցին համարել, և խնդրել: Դարձեալ 'ի սոյն կողմանս և յանուն Պարոնին Լեւոնի կարծեմ լինել զԼեւոնիա, զոր Բրինձն Պեմունդ Գ. յամի 1167 պարգևէր ասպետացն [3]: Աղաւաղութիւն անուանցդ ցաւ տայ, իսկ բազմութիւն նոցին՝ զուշակել, զի և այլոց հնգեցուն բերդորէից զըլխաւորաց՝ հանգոյն սմին և Ամուտոյն՝ էին ոչ սակաւ գեօղք և կալուածք, և հարկ էր 'ի մասին երկրիս՝ զոր տեղագրեմքս ընդ անուամբ Թիլ-Համտընոյ, գէթ հարիւրիւ չափ գիւղորայից զոլ, յորոց արդ և ոչ զմի ճանաչեմք հաւաստեաւ, ոչ զհին և ոչ զնոր: — Յե՞րբ 'ի ձեռս ասպետաց Տեւտոնաց մնաց Հարուն բերդ, ոչ գիտեմ, այլ Թուի որքան Ամուտայն, և յերկար ևս. թէ և ընդ այլոց բերդորէից՝ յարքունուստ Հայոց պահանջէին և զայն Եգիպտացիք, և ընկալան յամին 1337: Յիշի բազում ամօք յառաջ, (որպէս Թուի 'ի 1273), Բ Լեւոնի առ ափաւ պատահեալ և վանեալ զասպատակ Եգիպտացւոց:

82. Յելից հարաւոյ Հարունի խնդրելի է միւս ևս անուանի բերդ, Սարաւանի Քար, կամ Սարավան կամ Սարվանդաւ կոչեցեալ, ըստ ընտիր և հնագոյն գրուածոց, այլ յետոյ յաճախ սովորութեամբ Սարուանդի Քար, զոր և այլազգիք յիւրեանց լեզու յեղին՝ Սէրվէնտքեար, ركندوس. ծանօթ էր և Օսմանեան աշխարհագրին, որ գրէր լինել զայն 'ի ձորավայրի՝ 'ի սեպացեալ քարաբլրի, այլ ոչ ստուգիւ 'ի հիւսիսակողմն՝ որ է աջակողմն Ջահան գետոյ: Գեղեցիկ անունն հայկական յայտ առնէ զդիրսն կամ զընութիւնն, հանգոյն Պոռոօմի՝ 'ի նշանաւոր բարձրաբերձ և ափափայ քառաժեռի սարաւանդեալ լինել. և ըստ այսմ՝ մի յամրագոյն և նախանձելի բերդորայից աշխարհիս. բայց թէպէտ 'ի Հայոց և թէպէտ յօտարաց իցէ կառուցեալ՝ յառաջէ քան ըզձեռնարկութիւն Ռուբինեանց. զի 'ի սկիզբն ԺԲ դարու էր ընդ իշխանութեամբ եռանդուն և զօռ ասպետին Տանգրեայ. և յորժամ (1101) դարձաւ յարևմտից կոմսն Տուլուսայ Ռեմունդ Սէն-Ժիլ (Raymond de Saint-Gilles), նոր զնդաւ Խաչակրաց՝ դաւաճանութեամբ Յունաց կոտորելոց 'ի սուլտանէն Հոռոմոց, և ինքն փախուցեալ անկաւ յԱնտիոք, Տանգրի՝ կապեալ «երկաթի կապանօք յուղարկեաց զնա 'ի քաղաքն որ ասի Սարուաւնդաւի (ըստ Մատթէի Ուռհայեցւոյ). և զկնի աւուրց՝ Ֆռանկաց պատրիարքն որ յԱնտիոք և այլ քահանայք բարեխօսեցին առ Տանգրի, և արձակեաց զնա»:

Ի յիշելն զայս դէպս արքունի պատմիչս մեր՝ Սարվանդի-քար միայն կոչէ զտեղի բանտին, ոչ բերդ և ոչ քաղաք առաջրելով. զի եթէ էր նորա և աւան, որպէս արժան իսկ էր ունել, առ ստորոտովն էր. իսկ 'ի գագաթան վիմին՝ կարծեմ բնականն ամրութիւն չպահանջէր շատ ինչ և ձեռագործս: Պարոնն Լեւոն յամի 1135 կորզեաց զբերդն Սարվանդաւ 'ի ձեռաց արևմտեայց, և «եղև խռովութիւն մեծ 'ի մէջ Լեւոնի և Ֆռանգին», և բազում արիւնհեղութիւնք. և 'ի միւսում ամի յաջողեալ Պեմունդի տեառն Անտիոքայ ըմբռնել զԼեւոն՝ էառ 'ի փրկանս նորին՝ ընդ այլ տեղեաց և զՍարուանդի քարն, և արձակեաց զնա: Նոյնպէս և եղբօրորդի նորա Ռուբէն յետ յիսուն ամաց (1185) ետ զնոյն բերդ այլում Բրնձի Անտիոքայ՝ յորմէ ձերբակալեալ էր, և ազատեցաւ: Այլ ոչ ընդ երկար ամս 'ի ձեռս Անտիոքացւոյն մնաց տեղին. քանզի 'ի սկզբան պայազատութեան իւրոյ (1187), յաղթողն Լեւոն՝ սակաւաձեռն զնդաւ 'ի դիմի հարեալ ասպատակաց Թուրքմանաց, և սպանեալ զառաջնորդն նոցա Ռուստէմ, զփախստէիցն «զհետ մտեալ՝ կոտորեաց զնոսա մինչև 'ի Քարն Սարվանդաւի». և 'ի ժամանակի թագաւորութեան իւրոյ՝ իշխան քարաբերդին էր Սմբատ՝ եղբայր արքայահօրն Կոստանդնի՝ 'ի Հեթմեանց զարմէ [4]. զոր յաջորդեաց որդի իւր Ճօֆրի, քաջամարտիկ զինաւոր կոչեցեալ, և վախճանեալ յամսեան դեկտեմբերի 1261 ամի. սակաւ ամօք յառաջ փեսայացուցեալ զանդրանիկ որդին իւր և զպայազատ զԿոստանդին՝ 'ի Ռիթա դուստր թագաւորին Հեթմոյ. փափագէր և ինքն երբեմն առնուլ 'ի կնութիւն զՍիպիլ՝ զայրին Լեւոնի արքայի, այլ հօրեղբայր իւր Կոստանդին Պայլ ոչ եթող: Կոստանդնի յաջորդեաց եղբայր իւր Օշին, թերևս յետ միւսոյ եղբօր իւրոյ Սմբատայ, որոց ոչ յիշին պայազատք, բայց դուստր մի Օշնի՝ Ջաւպէղ անուն, որ տուաւ 'ի կնութիւն Թորոսի՝ որդւոյ Կիրոյ Իպլենեան ազնուական փռանկի և Մարեմայ դստեր արքային Հեթմոյ: — Առ Կոստանդնեաւ եղեն նշանաւոր դէպք 'ի Սարաւան. ասպատակն Եգիպտացւոց յամի 1266, յետ աղէտալի մարտին Մառեայ, որք ոչ կարացին տոնանել տեղւոյս, որպէս Համուսայն՝ զոր աւերեցինն. ապա մեծ ժաժն, յորմէ՝ ընդ այլս և «Դղեակն կոչեցեալ Սարաւանի քար՝ ընդ մէջ հերձեալ յերկիր կործանեցաւ, զամենայն բընակիչսն ծածկելով, բաց 'ի սակաւուց [5]»: Սակայն փութով երևի կարկատեալ պատառելոյն և վերանորոգեալ շինուածոցն. զի գտանի բնագիր մի դաշանց Կոստանդնի ընդ Ալաման ասպետաց յամի 1271, զորոց տեսակք 'ի վերոյ զկալուածս 'ի Հարուն և 'ի սահմանսն, որք և երևին ձգիլ մինչև 'ի սահմանս Սարաւանի և ցիշխանութիւն տեառն նորին. երկոցուն սահմանամէջ էր Սեւ պուրձ անուանեալ լեռնոտ կամ բլուր մի, յորում կայր կանգնեալ Խաչ և տնկեալ տանձի. անդ հաստատեալ էին ասպետքն իւրեանց տուն բաժանութեան յանցորդաց. և այս հակառակութեան լինէր առիթ ընդ Սարա-

1 In terra Aronie casale Churar cum suis pertinenciis . . . Ante Tilium gastinam nomine Agamir, cum pertinenciis suis. Casale Gadir . . . Casale . . Uplie, cum pertinenciis suis . — Paoli.

2 In terra Cafardan casale Muserat, cum pertinenciis suis. — Id.

3 *Leconiam* quidem cum divisis suis. — Paoli.

4 Տես յԱզգացուցակն Հեթմեանց զզարմ Սարաւանդքեայցս:

5 Այսպէս ասէ յիշատակագիր մին ժամանակին. իսկ զայլոցն երկարագոյն ևս բանս՝ կարգեցաք 'ի բնագրութեանս, յէջ Ց:

ւանցիս. վասն որոյ հաւանեցոյց զնոսա Կոստանդին՝ բառնալ անտի զբաժտունն և հաստատել սակաւ մի բաժ ցագոյն՝ յայսմ կամ յայնմ կուսէ Սեւ Պրձին, և ստորագրութեամբ եղբօր իւրոյ Սմբատայ և այլոց ազատաց՝ վաւերացոյց զպայմանն նամակն. յորմէ դուշակի՝ զի սեփական Սարաւանդայց էր յիշեալ տեղին, և շնորհ առնէր նոցա տէրն զհաստատութիւն բաժտանն։ Եւ քանզի միակ նշխար է մնացեալ դաշնագիրս այս 'ի նմանեացն, պահեալ արդ 'ի դիւանս Վենետկոյ՝ հրատարակեմք աստանօր, որպէս երբեմն արարեալ էր մեր առանձինն հանդերձ նմանահանութեամբ պատճենին.

« Ցանուն Հաւր և Որդոյ և սուրբ Հոգոյն. Գիտացնեմ
» ձեզ ամէնեցուն որ զայս թուխթս հասկնայք, որ ես
» Կոստնդին ծառայ Աստուծոյ և որդի Պարոն Ճաւֆրէ
» և տէր Սարվանդիկքարին. զոր էկաք 'ի Սև պրձին ուսն՝
» ուր խաչն կայր ու տանձին, մենք ու ամէնայմէծ մայստ-
» ւրն Ոսփիթլուն Ալամնացն՝ Ֆրէր Իանն [1], ու 'ի վերոյ
» անվանել ուսս ուր խաչն կայր ու տանձին, նայ չինել
» էին զիրէնց տուռն վանց իրենց բաժուն. Նայ մենք
» չէաք 'ի համնել. կու լինէր շատ զրոյց 'ի մեր մէջն վ'ի
» յիրէնցն. Նայ էկաք մէնք ու վերոյանվանել մայստուն
» 'ի վերայանվանել տեղին 'ի Սև Պրձին ուսն, ուր խաչն
» կայր ու տանձին. ու հայնց համնեցաք մենք ու մաստ-
» ւրն ու իրեն (ձիաւորքն որ) չինեն զիրէնց տուռն 'ի
» Սև Պուրձն, թէ իրէնց պիտի ընդ նեկսէ 'ի Պուրձն,
» թէ իրէնց պիտի ընդ դրացէ խէչ Պրձին, ու առնուն
» զիրէնց բաժն 'ի ճանբէն, զինչ ցեղ ինչֆի յայս աւր
» էն առել՝ որ զթուխթս գրեցաք. ու 'ի յայն տնվոյն
» տեղն որ չինել էին որ մէնք չէաք 'ի համնել՝ խէչ տան-
» ձոյն ու խէչ խաչին 'ի յուսն, նայ այլ չլինէն 'ի հաւն
» տուն, ոչ իւրէնք ոչ իւրէնց Քումանտրերն որ գան։

« Եւ տվաք զմեր թուխթս և զձեռնգիրս ամէնայմէծ
» մաստուին և իրէնց տանն, որ լինի հաստատուն յավի-
» տեն։

« Գրեցաւ 'ի մէծի թվականութիւնս Հայոց ՉԻ. մը-
» կայութեամբ մէծազգի իշխանին մեր աղբաւրն Պա-
» րոն Սմբատայ. և մէծահարկի ձիաւորացն՝ Սիր Կոս-
» տանցին ու Սիր Ըռնաղտին ու Սիր Գոյներին։ Գրե-
» ցավ 'ի փոքր 'ի թվիս յամսենն յունիսի աւր էր ԺԵ.
» Թ̄Կն. ԺԳ »։ † Ի Կոստանդինէ։

Ի սահմանս Սարվանդաւի եհար հուսկ նուագ մեծ սպարապետն և գունդստապլն Հայոց Սմբատ՝ զեգիպտացի հրոսակն՝ յամի 1276, յորում մարտի կամ յեւս 'ի մարտէն վիրաւորեալ և ինքն՝ կատարեցաւ փառօք։ — Աւելորդ է կրկնել զի 'ի բռնանալ Եգիպտացւոց կամ 'ի տկարանալ մերոցս, ընդ նախայիշեալ բերդորայս պահանջեցին և զՍարուանդի քար, ընդ որս և զԿովառա բերդ, որ ոչ յիշի 'ի կարգի այնոցիկ՝ որոց տեարքն եկին 'ի հանդէս թագընկալութեան Լևոնի. և կարծեմ նոյն ընդ Gouvaira, զոր յամի 1233 Կոստանդին տէրն Լամբրունի, եղբօրորդի Սրբոյն Ներսիսի, պարգևէր ասպետաց Հիւանդանոցին, և պարգևագիրն Փռանկաց լեզուաւ գրեալ պահիւր երբեմն 'ի վանս սուրբ աշխարհի նոցին, և արդ ոչ գտանի։ Թէպէտ և ոչ սակաւ հեռի է տեղիս 'ի Լամբրունէ, այլ մարթ էր ժառանգութեամբ ունել զայն Կոստանդնի. ըղձալի է գիտ պարգևագրին 'ի ստուգութիւն կարծեացս և անուանց սորին և Սկեւռային՝ ընդ որում մարթ էր չփոթել։ Մի 'ի չէն մնացեալ բերդորէից աշխարհիս էր Կովառա և յետ Ռուբինեանց հարստութեան. քանզի ընդ այլս ոմանս յիշի յանագան ժամանակին՝ յամի 1467 նուաճեալ 'ի Չիւլգատրեանն Շահսուարէ, և քսան ամաւ ևս յետոյ (1488) նուաճեալ յԱլի փաշայէ մեծ կուսակալէ Ռումէլեայ [2]. և յուսալի է ցարդ լսելի լինել անուանն՝ եթէ քննիցին սահմանքս, յորս այնքան ասպատակք, աւերք և արեանց ճապաղիք եղեն, և այնքան սերտ և ստէպ պաշտպանութիւնք. այնքան քաջութեան և հայրենական հոգւոյ ներգործութիւնք, զորս լուեալ հայ գրչաց՝ արաբացի եղեգունք միայն մեզ աւանդեն զեղերականսն։

83. Փոխանակ գրայիշատակ բերդիցս այսոցիկ՝ ծանօթ են արդ 'ի սոյն կամ 'ի մերձաւոր կողմանս, 'ի գլուխ Արայ գետոյ, որ է յարևելս, 'ի ստորոտս Ամանոսեան լերանց երկու բերդք, Զարտագ և Թօփրա կամ Թօփրագգալէսի։ Առաջինն արևելագոյն է և հպագոյն յԱմանոս լերինս, 'ի կատար մի բարձրաբերձ և մայրեւոր, այլ հանգամանքն ինձ անծանօթ. առ որոյ ստորոտով կայ գիւղ համանուն։ — Իսկ փարախաւ յարևմտից բերդիս է Նորաշէն աւանն հաստատեալ յետ նուաճման Սեաւլեռնեայց, Օսմանիէ, և ըստ ոմանց գրութեան Ասմանիէ, բնակութիւն Չէրքէզից և լեռնականացն Ամանոսի, որոց է և վաճառանոց, իբր 150 տամբք, յորս և հինգ տունք Հայոց. 'ի միում 'ի սոցունց ագաւ Տէյլիս անգղիական երէց յամի 1875 (28 ապրիլի)։ Վասն ամայութեան շրջակայ սահմանացն՝ յաճախ երևին գազանք, մանաւանդ գայլք 'ի ձմերան. և ընձառիւծ մի ոչ յառաջ քան զբազում ամս սպառառեալ էր զայր մի և մանկունս չորս։ — Միւս բերդն Թօփրագ (Հողաբերդ) հարուստ մի ընդ արևմուտս կայ առ գետեզերբն, 'ի վերայ կոնաձև բարձրաւանդակի՝ իբրև 80 Չ. բարձու, շինեալ սևագոյն պազալդեան հրաբղխեայ քարամբք, որպիսի թուի և բնութիւն բլրակին. 'ի բարձանց պարսպացն նշմարի ընդ հիւսիս դաշտ ընդարձակածաւալ, գրեաթէ մինչև 'ի հովայս Տօրոսի, յաջմէ և յահեկէ՝ լերինք Մասայ և Ամանոս. և ընդ Մ. հիւսիսոյ՝ պարիսպքն Անաւարզայ և Սսոյ։ Ոչ է իսպառ աւերեալ բերդն, կրկին ունելով պարիսպս, ներքինն յոյժ ամրականոյց, և ակառն մի կամ ներքին կլայ մեծակամար ներքնայարկօք և չուրջանակի փոքրիկ խորանաձև սենեկօք. Ջրամբար 'ի միջի

[1] Ի չարս կարգապետաց Ալամանն ասպետաց ոչ յիշի այսպէս Իան (Ցովհան) անուն յայնմ ժամանակի, այլ Anno կամ Hanon Sangershausen. արեւմտեայք՝ համարին զսա կացեալ մնացեալ մինչ 'ի Գերմանիա. բայց ըստ բանից վաւերական թղթոյս՝ հարկ է թէ կամ յայսմ ամի (1271) էր նա յարեւելս և 'ի Կիլիկիա, և կամ թողեալ էր աստ փոխանորդ իւր զոմն Իան անուն։

[2] Զայս համարիմ անշուշտ զգրեալն Kure 'ի Համմէրէ, 'ի Պատմութեան Օսմանեանց, Ի։

բակին, ամբարանոցք և ախոռք 'ի ստորև։ Բլուրն համակ մացառապատ է և օձուտ. առ ստորոտովն միան աւերակք հին աւանի, յորում կանգուն կայ միայն մնիրայ մզկիթին շինելոյ սեաւ խանձաքարամբք, և բեկորք սեանց, յորս և մերնախարիսխ մի կորնթեան 'ի սպիտակ կճոյ։ Հաւանօրէն մի է բերդս այս 'ի յիշեցելոցն 'ի պարգևագրին Հեթմոյ։ — Ընդ մէջ սորա' 'ի հարաւոյ, և Օձաբերդին' 'ի հիւսիսոյ, առ եզերբ Ջահանայ կայ Ճաւմիլի գեօղ, այսպէս կոչեցեալ վասն բարձր մնիրային որ 'ի հարուստ հեռաստանէ երևի, և ասի կառուցեալ 'ի գեղջկացն և գտեալ շնորհս ազատութեան 'ի տասանորդաց։ Մերձագոյն ևս 'ի Հողաբերդն է Աղիզլի գիւղ, յորմէ ոչ հեռի հին գերեզմանք լատին Թուանչանօք։

Սակաւուք հեռի 'ի հիւսիսոյ արևմտից Օսմանիէի' գետակ մի Եալպուզ կոչեցեալ' իջեալ 'ի թիկանց Ամանոսեանց Թափի 'ի Ջահան, հանդէպ Պուստուն և Համադիէ բերդից. յորոյ ափունս խայտային Թռչունք, հանդերձ քաղցրաձայն սոխակաւն, յանցանելն ընդ այն Տէվիսի 'ի վերջ կոյս ամսեանն ապրիլի։ Ընդ մէջ գետակիս' յարևելից' և մեծի պարուն Ամանոսի, ընդ փոքր լեռնագօտի մի' են անցք կամ նեղուցք Տեվրիչլի կամ Տեվրիշ պէլի կոչեցեալ, ոչ սակաւ դժուարակոխք. յանձկագոյն միջոցին կառուցեալ կայ, զարդիս կիսաւեր, բերդ մի' Քեօփէկ գալէսի (Շնաբերդ) կոչեցեալ 'ի Թուրքաց. Նրբուղին տանի ընդ հիւսիս 'ի միւս ևս կապան Պիլլէնի-պէլի կոչեցեալ, յոր անուն և լեառն մի. անդր քան զայն ընդարձակի հովիտն, և է 'ի նմին 'ի սահմանակցութեան Մարաշու գեօղ մի Պաղչէ անուն' բնակեալ' ըստ Տէվիսայ, 'ի 150 բողոքական Հայոց և 'ի սակաւ մսլիմաց։ Սահմանք գեղջն' որ կառուցեալ է 'ի կիցս երկուց ձորակաց Եալպուզ գետոյ' ահեղագեղք են պէսպէս կերպարանօք գունագոյն ապառաժ վիմաց և ծառոց։ Տէվիս Անգղիացի երէց որ յամի 1875 յՕսմանիէ աւանէ երթայր 'ի Մարաշ, անցանելով ընդ Տէվրիչլի և Պիլլէնի կապանս լերանց, յոյժ ուղղորդս և վախուտս նկարագրէ զքարաբլուրս ճանապարհին, յորոց եթէ քար մի զերծանիցի' ուղղակի իջանէ 'ի գետ անդր (Եալպուզ) հարիւրաւոր ոտնաչափ 'ի վայր։ Մեծաքանչ և գեղեցիկ են տեսարանք կրճից Կեավուր տաղ լերանց, և համակ մայրեւորք, մանաւանդ խորաձոր գետոյն' սօսեօք և արքալաղնեօք և այլովք ծառովք. գեղեցիկ է և գետն յստակ և ականակիտ ջրով, ուրեք ուղխօրէն խոխոջալով, այլուր փրփրացեալ 'ի կոչկոռս կարմիր կամ կանաչ կճեայ քարանց, մերթ շրջան առեալ զմեծամեծ կոճեղբք հնացեալ ծառոց, և մերթ պարզեալ որպէս ճահիճ մի խաղաղ, աստ և անտի ընդունելով վտակս մանունս։ Երևին մերձ ընդ մերձ հիւղք մենաւորք գոյզն ինչ ագարակօք, 'ի բարձունս անմատոյցս 'ի գետափանց կուսէ. երջանիկս համարի Տէվիս զբնակիչսն' քան զհամավիճակս նոցին յեւրոպէ. զի թէպէտև աղքատք' այլ և սակաւապէտք, միանգամայն և պարզամիտք, պարկեշտք և կրօնասէրք։ Ժամս չորս գնալով նորա ընդ կածանս' եհաս յանջրպետ գետոյն և օժանդակի միոյ նորուն, 3500' բարձր, և անտի ընդ արևելս խոտորեալ' 'ի Գզըլ-աղաճ-օտուրաու? լեռնագեօղ Հայոց, ագաւ (29 ապրիլի) առ գլխաւորի նորին, որ էր Թորոս Ջագըրեան. երիտասարդ երեսունևհինգամեայ, մեծատուն և բարեբարոյ (արդ †), որոյ կալուածք և ագարակք էին 'ի Հովտուն անուանեալ տեղւոջ. և ցուէր նմա զի այնպիսի ճարտար այր' ոչ էր վարեալ 'ի կարևոր գործ տեսչութեան։ Յիշէ և վարժապետ և աշակերտս, յորոց յայտ է զի գոյր և դպրոց. և զկճեայ սպիտակ խոյակս սեանց յԱնազարբայ բերեալս 'ի պէտս կառուցման եկեղեցւոյ։ Աստի և անդր ընդ հիւսիս' սահմանք են Մարաշայ, յերկրին Ջահանայ։

## ՍԻՍ

84. Արևմտեան օժանդակ Սաւրան գետոյ' 'ի հիւսիսոյ 'ի սահմանաց Հաճնոյ և Վահկայի, և յարևելից լերանցն անջրպետաց երկոցուն մեծաց գետահովտաց Սարոսի և Ջահանայ' իջեալ խաղայ ընդ հարաւ, և դարձեալ ընդ արևելս' սակաւուք 'ի հիւսիսոյ Անազարբայ' խառնի ընդ նմին։ Թէ ոչ բովանդակ' գէթ վերին մասն հովտին որ ուղղակի 'ի հիւսիսոյ 'ի հարաւ ձգի' սահմանէ զգաւառ Սսոյ, վասն որոյ և յանուն նորին հասարակօրէն կոչի Սսոյ գետ, սակայն յատուկ ևս անուամբ Տէլի-չայ, անշուշտ վասն յախուռն հոսմանցն ընդ ձորակն անձուկ, որ և կոչի Մանդաչ-տէրէսի կամ Մէնդէշէ, յոր անուն դիպողագոյն էր կոչել և ջրոյն, թէ ոչ և Սըմբոս կամ Սըմպոս, որպէս յոմանց, և յայլոց' Քէսիկ չայ. այլ հարկ է թէ այլ և այլ վտակք իցեն սոքա օժանդակեալք 'ի մի, [1] որով յորդորեալ գետանայ և քերէ զարևմտեան ստորոտովք քարալերինն' յորոյ վերայ շինեալ է քաղաքն և բերդն Սսոյ։ Այլ և յարևելից կողմանէ լերինն իջանէ վտակ փոքր' Ալափար? կոչեցեալ յանուն գեղջ միոյ, կամ Աւմնցուկ' ըստ Ինճիճեան Հօր. և որպէս թուի' թափի 'ի գետն Սըսոյ կամ 'ի Սաւրան։ Ըստ այսոցիկ սահմանք Սսոյ վիճակիս' 'ի հիւսիսոյ կուսէ են Հաճին, 'ի հիւսիսոյ արևելից' Կապան և Զէյթուն, յարևելից' Գարս, 'ի հարաւոյ' Անազարբա, յարևմտից' անծանօթ վիճակ լերամբք անջրպետեալ 'ի գետահովտէն Սարոսի։ Ցանուն Սսոյ կոչին լերինքս, այլ չեն ծանուցեալ ձգուածք նոցին և զօդուածք ընդ ոստս Տօրոսի կամ Անտիտօրոսի. որպիսի և են' լեռնային և կոհակաբերձ ցուցանեն զհիւսիսային մասն վիճակին, թէ և ոչ շատ բարձր. իսկ հարաւայինն

[1] Ըստ բանից ինչ Տէվիսայ' բազում աղբերաց 'ի դէպ է լինել 'ի լերինս հիւսիսակողման Սսոյ, ուստի իջանեն ընդ հարաւ 'ի Ջահան. զի յերթալն իւրում 'ի Սսոյ դէպ յԱտանա' յերկուս ևեթ ժամս էանց նա ընդ երիս մեծամեծ վտակս, զորս անուանէ Տէլի չայ, Բունդար չայ և Իտամ, (յետինս յանուն գեղջ միոյ), և ընդ այլս ևս յոլով առուակս էանց զայնու ճանապարհաւ։

The number of springs in the mountain range to the north of Sis must be very great, for we crossed no less than three large streams and several brooks in the course of morning, all flowing southwards toward the Jeihaan. At 10 A. M. we crossed Deli Tchai, at 10.30 A. M. another stream equally large, the Kara Pongar Tchai; at 11 A. M. the brook of Idam, near the village of the same name. — Davis, 157.

թեւան վայր՝ ընտրել իւր յոստան և յարքունիս. հարկ է թէ ստէպ և բուռն աւերածք քաղաքին և վիճակին՝ կապտեցին և այլափոխեցին զբնական վայելչութիւնն ևս. և 'ի հակառակէն՝ գուշակի բազում մասամբք քօղաղէպ և շնորհաւոր լինել տեղւոյն. 'ի միջոցի երկուց վտակաց, զոր յիշեցաք, և 'ի կռան ունելով՝ յերից կողմանց՝ զառաջին գահաւանդս Տօրոսի, որք պատրաստ իմն ապաւէն ընձեռէին 'ի տագնապս վտանգի, և յառաջոյ զդաշտավայրն շինաշատ և բարգաւաճ, յորում աճեն և նարընջենիք և լեմոնիք՝ դուն այլ ուրեք երևեալք 'ի Կիլիկիա. իսկ ինքնին քաղաքն կալով 'ի դիւրահակ քամակի հիւսիսային արևելեան դիմի մեկնակ ապառաժուտ



53. Լեառն եւ Բերդ Սսոյ, ըստ լուսագրութեան Favre և Mandrot քննողաց.

կարմրագոյն կրային լերին՝ ոչ կարի բարձու, կրէ 'ի քառասայր գագաթանն զբերդն անմատչելի, վասն սեպացեալ անկռուան կողմանցն. թող յեռակարգեան պարսպօն՝ զբոլանդակ արտևանաւն՝ որ յերկայնաձև իմն է 'ի հիւսիսոյ ընդ հարաւ ձգեալ մղոնաչափ երկայնութեամբ. իսկ բարձրութիւնն ոչ աւելի քան զ1000': Վաղուրեմն նախնի բնակչաց և տերանց երկրին նկատեալ և յարգարեալ էր զայս վայր. զոր ոմանք սխալակի յարանուն խոսոսի և զնոյն իսկ կարծեցին, զտեղի ճակատու պատերազմի մեծին Աղեքսանդրի ընդ Դարեհի. շատք յարգի գիտնոց համարին զՍիս լինել զանուանեալն 'ի Կիկերոնէ Պինդենիսսոս (Pindenissus), զամուր ապաւէն Ազատ-Կիլիկեցւոց, զոր պաշարեալ ասուրս քառասունևեօթն, էառ յ'17 դեկտեմբերի, 48 ամաւ նախ քան զգալուստ Փրկչին. այլ չիք ինչ փաստ հաւաստեաց զուգութեան տեղւոյս, և ոչ ըստ այլոց՝ Փլաւիա (Flavias) կամ Փլաւիոպօլիս (Flaviopolis) լինելոյ, որ հաւանօրէն է 'ի ստորև առ Ուչաքաւ, (ուր և գտան հռոմէական դրամք), կամ ըստ ոմանց անուանեալն Բրիւելիկ (Augusta Bryelica) 'ի համանուն վիճակի (Bryelice)[1], զոր և աներկմտաբար գրեն ոմանք Augusta Sisia, Սիս աւգոստեան: Դարձեալ և 'ի հակառակէն ոչ է ստոյգ 'ի Բուբինեանց լինել առաջին հիմնարկութեան քաղաքին. որոյ և հակիրճ անուն՝ մեծի հնութեան է նշանակ. և այսպիսի կամ նման կոչմամբ զառաջինն կարծեմ գտանի 'ի Ե դարու Սիսան, Σισαν գրեալ 'ի Թէոդորետեայ 'ի վարս Սիմէոնի Սիւնակեցի[2]. և 'ի հին լատին Թեմագրութեան Երուսաղեմի և Անտիոքայ 'ի Զ դարու՝ մի յեպիսկոպոսութեանց...

[1] Որպէս անունս այս օտար և հայկականն՝ զԲիւրեղ յիշեցուցանէ, և այն զԱպակեհողն վկայեալ 'ի վեր անդր:

[2] Թէոդորետոս, Պատմութիւն Միանձանց. ԻԶ. Κώμη τίς ἐστιν ἐν μεθορίῳ τῆς ἡμετέρας καὶ τῆς Κιλίκων χώρας διακειμένη. Σισὰν δὲ αὐτὴν ὀνομάζουσιν. — Theodoretus, *Historia Religiosa*, XXVI.

րանաց նաՀանգին Անաւարզայ գրի Սիս, ըստ այլեայլ օրինակաց, Sisia, Sysia կամ Sisya. Դժուին Համարէր նշմարել 'ի Սիս Հռոմէական Հնութիւնս[1]. որպիսի ճանաչի և մասն կամրջին 'ի վերայ Տէլի-չայ գետոյ[2]: Սովիմբ դեռևանայ աւանդութիւն Արաբացի պատմչի միոյ՝ եթէ ներքինւոյ պաշտօնէի Հարուն-էր Ռէշիտ ամիրապետի շինեալ իցէ զՍիս յելս Ը դարու և անուանեալ Սիսիյէ. 'ի սկզբան իսկ այնր դարու Սիս անուամբ ծանօթ էր Բիւզանդացւոց տեղին, զոր և յամի 703 Ազիպ կամ Եզիտ որդի Խունէի պաշարեալ էառ և աւերեաց, այլ Հերակլ զօրավար կայսեր՝ Հալածեաց զնա: Թէոփանէս որ պատմէ զդէպքս՝ Σισον κάστρον գրէ, Սիս կամ Սիսոն բերդ. իսկ արևելեայք ըստ մեզ կոչեն և գրեն պարզապէս Սիս, سيس: Ի սկիզբն Թ դարու (809) ըստ աւանդութեան Արաբացւոց՝ խոյս ետուն բնակիչք Սսոյ 'ի լերինս, այլ 'ի նորոգել զայն Արաբաց՝ Հայք թողեալ զգեղեցկաշէն քաղաք իւրեանց Խալալ?, եկին 'ի Սիս. և բովանդակ արևելակողմն երկրին մինչև 'ի Հալէպ կոչեցաւ յանուն Սսոյ, յորում էին երեք Հարիւր վաթսուն աւանք ամուրք և քսանևվեց բերդք անառիկք[3]: Ցառաջ քան զտիրանալ Ռուբինեանց 'ի կողմանքս՝ յամի 1114 (Նոյեմբ. 13) 'ի մեծ սասանութենէ որ դղրդեցոյց զարևելակողմն Կիլիկիոյ՝ անդր քան զԱնտիոք, զՄարաշ և զՌապան, կործանեցաւ և Սիս՝ կորստեամբ « անթիւ արանց և կանանց », ըստ Ուռհայեցի ժամանակագրին մերոյ. որ տայ գուշակել զի արդէն շէն և բազմամարդ էր տեղին: Ի մերազգեաց նախ Թորոս Ա տիրեաց Սսոյ, ըստ Տարտելի, ապա Թորոս Բ, ըստ պատմչին Խաչակրաց. յետ նորա պատմիչք մեր ասեն վասն եղբօր նորին Մլեհի, (1175), եթէ « իշխանք նորա սպանին 'ի նորաշէն քաղաքն Սիս, » վասն վատ բարուց նորա ». բայց 'ի Հնագիր արքունի պատմչին չիք բառդ նորաշէն: Սակայն ստոյգ նորոգող կամ նորակերտող Սսոյ ճանաչի և է Լեւոն Ա թագաւորն, որ ձեռն էարկ 'ի շինութիւնն և յամրութիւնս՝ յառաջ իսկ քան զթագաւորելն. այլ և անդստին յայնմ ժամանակէ՝ թէ ոչ քաղաքին այլ բերդին պարիսպք՝ թէ շատ թէ սակաւ կանգնեալք և անկասկածք երևին. քանզի յասպատակելն Ռստոմ Թուրքմանի յամին 1187 'ի սաՀմանս Հայոց, ասի, « գնաց մինչև 'ի Սիս, և բնակեցաւ » առաջի քաղաքին յ'Ռաւինն. և ծածկեաց զերեսս երկրին անՀամար բազմութեամբ ». յայտ է թէ ոչ իշխեաց յարձակել 'ի քաղաքն, որում և չեթող ժամ՝ Լեւոն, սակաւաձեռն ջոկատու 'ի վերայ նորա Հասեալ և սպանեալ, և զայլսն Հալածեալ: Ստուգելի է իմաստ ռաւինն բառիդ, բարձրաւանդակ արդեօք իցէ, եթէ վտակ ջրոյ, թէ այլ ինչ, յայտնիչ կերպարանաց տեղւոյն: Ցետ սակաւուց նոյն ինքն Լեւոն Հարեալ միւսանգամ զայլազգիսն 'ի սաՀմանս Մարաշայ,

« Էառ զաւարըս գերողին՝
Ջանբան ժողով բանականին,
Էած 'ի մայր իւր քաղաքին
Որ է Սիսուան անմատչելին ».

որպէս երգեաց Գրիգոր Տղայ, որ վախճանեցաւ յամի 1193. ապա յայտ է թէ և յառաջ քան զայն թուական՝ ըստ բաւականին շինեալ և քաջ ամրացեալ էր բերդաւըն, թէ և ոչ ստորին պարսպօքն. քանզի յետ քան ամաց (1211-2) յորժամ եկն այսր իբրև պատգամաւոր և Հիւր՝ Վիլեպրանտ Օլտէնպուրկեան ազնուատոՀմ գերմանացի՝ ընդ դեսպանի դքսին Աւստրիոյ, և եկաց ամսօրեայ աւուրբք առ թագաւորին, աքանչացեալ ընդ վայելչութիւն պէսպէս շինուածոցն և զբօսարանաց՝ գրէր[4]. « Այս է գլխաւոր քաղաք տեառն արքայի, առ » ընչական անթիւ և մեծատունս բնակչաց, ոչ ունելով » պարիսպս շուրջանակի. վասն որոյ աւան մանաւանդ » քան թէ քաղաք անկ էր ինձ կոչել զայն, եթէ չունէր » աթոռ արքեպիսկոպոսի Հայոց, յորում և Յոյնք Հնազանդին » իւրեանց պատրիարքի: Բայց ունի բերդ 'ի » բարձու 'ի լերինն, կարի քաջ ամրացեալ. յորոյ ստորոտից » քաղաքն ինքնին թուի դարաձև աստիճանօրէն » իջանել. և որպէս ասեն՝ էր սա երբեմն եղեալ Դարեհի, » որում յաղթեաց Աղեքսանդր ... Գիտելի լիցի և » այս, զի տէր արքայ առ երի քաղաքիս պատրաստեաց » իւր պարտէզս փափկութեան, զորոյ զվայելչութիւնս » նկարագրել՝ խոստովանիմ անբաւական լինել »: Զանց առնեմ ստանօր զերկար ստորագրութեամբ նորա զմեծաՀանդէս Ջրօրհնեացն, որ յաւուր տօնի Յայտնութեան կատարեցաւ առ եզերբ ջրոյն Սսոյ: — Ի դէպ իսկ էր Լեւոնի նախ քան զայլ շէնս՝ զՀռչակաւորն զայն յարդարել բերդ, որ ցվերջ տէրութեան յաջորդաց իւրոց՝ ամուր ապաւինի նոցին եղև, և յետին կռուան և կէտ Հայկական թագաւորութեան, ոչ այնքան յաՀէ և 'ի սովոյ՝ որքան 'ի կարծմոութենէ ոմանց մատնեալ առ թշնամիս. այն որ յերկդարեան ժամանակի՝ Հանդիսարան եղեալ էր մեծամեծ յաղթութեանց և աղետալի պարտութեանց. ոմանց տեղի պարծանաց և չքոյ, և ոմանց կորանաց և սգոյ. քանզի և արգելան բանտի լինէր երբեմն քրէական յանցաւորաց և ականաւոր արանց. որպէս և անդստին յամի 1193 բանտարգել արար Լեւոն 'ի բերդի անդ զձերբակալեալ Բրինձն Անտիոքայ Պեմունդ Գ: Նա թէպէտ ինքն նաև յայլ գլխաւոր քաղաքս տէրութեան իւրոյ, որպէս 'ի Տարսոն՝ Հին մայրաքաղաքն, կատարէր զարքունական Հանդէսս և զընդունելութիւն դեսպանաց և նուիրակաց արևելեան և արևմտեան պետաց՝ մեծաց և փոքունց, և զգունգս (consuls) վաճառական Հասարակապետութեանց և քաղաքաց Իտալիոյ,

1 Des ruines romaines encore importantes prouvent qu'une ville existait déjà à cette place du temps de l'Empire Romain. — TEXIER, ASIE MINEURE, 583.

2 Ֆաւր և Մանտրոյ, 30:

3 Պէլազօրի պատմիչ աշխարՀակալութեանց Արաբացւոց:

4 In die vero, hoc est in festo Epiphaniæ .. pervenimus Sis .. Hæc est » capitanea civitas Domini Regis, infinitos et divites fovens inhabitantes; » nullis munitionibus cingitur: unde potius eam villam quam civitatem » nuncuparem, si sedem Archiepiscopalem Hormenorum in se non haberet: » in qua etiam Græci suo obediunt Patriarche. Castrum vero habet super » se situm in monte, valde munitum; a cujus pede ipsa civitas ordinate et » gradatim discendere videtur: et, ut dicunt, hæc aliquando a Dario rege. » quem Alexander devicit, possidebatur ... Illud etiam scitote, quia Dominus Rex juxta hanc civitatem hortum deliciarum sibi præparavit; ad » cujus delicias describendas meam confiteor insufficentiam ». — WILLEBRAND.

րանաց նաւահանգին Անաւարզայ գրի Սիս, ըստ այլ և այլ օրինակաց, Sisia, Sysia կամ Sisya. Գեսիէ համարէր նշմարել 'ի Սիս հռոմէական հնութիւնս[1]. որպիսի ճանաչի և մասն կամրջին 'ի վերայ Տէլի-չայ գետոյ[2]: Սովիմք դերեանսյ աւանդութիւն Արաբացի պատմչի միոյ՝ եթէ ներքինւոյ պաշտօնէի Հարուն-էր Ռէշիտ ամիրապետի շինեալ իցէ զՍիս յելս Ը դարու և անուանեալ Սիսիյէ. 'ի սկզբան իսկ այնր դարու Սիս անուամբ ծանօթ էր Բիւզանդացւոց տեղին, զոր և յամի 703 Աշիպ կամ Եզիտ որդի Խունէի պաշարեալ էառ և աւերեաց, այլ Հերակլ զօրավար կայսեր՝ հալածեաց զնա: Թէոփանէս որ պատմէ զդէպքս՝ Σισον κάστρον գրէ, Սիս կամ Սիսոն բերդ. իսկ արեւելեայք ըստ մեզ կոչեն և գրեն պարզապէս Սիս, سيس: Ի սկիզբն Թ դարու (809) ըստ աւանդութեան Արաբացւոց՝ խոյս ետուն բնակիչք Սսոյ 'ի լերինս, այլ 'ի նորոգել զայն Արաբաց՝ Հայք թողեալ զգեղեցկաշէն քաղաք իւրեանց Խալալ?, եկին 'ի Սիս. և բովանդակ արեւելակողմն երկրին մինչև 'ի Հալէպ կոչեցաւ յանուն Սսոյ, յորում էին երեք հարիւր վաթսուն աւանք ամուրք և քսանևվեց բերդք անառիկք[3]: Յառաջ քան զտիրանալ Ռուբինեանց 'ի կողմանքս՝ յամի 1114 (Նոյեմբ. 13) 'ի մեծէ սասանութենէ որ դղրդեցոյց զարեւելակողմն Կիլիկիոյ՝ անդր քան զԱնտիոք, զՄարաշ և զՌապան, կործանեցաւ և Սիս՝ կորստեամբ «անթիւ արանց և կանանց», ըստ Ուռհայեցի ժամանակագրին մերոյ. որ տայ գուշակել զի արդէն շէն և բազմամարդ էր տեղին: Ի մերազգեաց նախ Թորոս Ա տիրեաց Սսոյ, ըստ Տարտելի, ապա Թորոս Բ, ըստ պատմչին Խաչակրաց. յետ նորա պատմիչք մեր ասեն վասն եղբօր նորին Մլեհի, (1175), եթէ «իշխանք նորա սպանին 'ի ճորաչէն քաղաքն Սիս, » վասն վատ բարուց նորա». բայց 'ի հնագիր արքունի պատմչին չիք բառդ ճորաչէն: Սակայն ստոյգ նորոգող կամ նորակերտող Սսոյ ճանաչի և է Լևոն Ա թագաւորն, որ ձեռն էարկ 'ի շինութիւնն և յամրութիւնս՝ յառաջ իսկ քան զթագաւորելն. այլ և անդստին յայնմ ժամանակէ՝ թէ ոչ քաղաքին այլ բերդին պարիսպք՝ թէ շատ թէ սակաւ կանգնեալք և անկասկածք երևին. քանզի յասպատակելն Ռստոմ Թուրքմանի յամին 1187 'ի սահմանս Հայոց, ասի, «գնաց մինչև 'ի Սիս, և բնակեցաւ » առաջի քաղաքին յ'Ռաւինն. և ծածկեաց զերեսս երկ» րին անհամար բազմութեամբ». յայտ է թէ ոչ իշխեալ յարձակիլ 'ի քաղաքն, որում և չեթող ժամ՝ Լևոն, սակաւաձեռն ջոկատու 'ի վերայ նորա հասեալ և սպանեալ, և զայլսն հալածեալ: Ստուգելի է իմաստ ռաւինն բառից, բարձրաւանդակ՞ արդեօք իցէ, եթէ վտակ ջրոյ, թէ այլ ինչ, յայտնիչ կերպարանաց տեղւոյն: Յետ սակաւուց նոյն ինքն Լևոն հարեալ միւսանգամ զայլազգիսն 'ի սահմանս Մարաշայ,

«Էառ զաւարըս գերողին՝
Զանբան ժողով բանականին,
Էած 'ի մայր իւր քաղաքին
Որ է Սիսուան անմատչելին».

որպէս երգեաց Գրիգոր Տղայ, որ վախճանեցաւ յամի 1193. ապա յայտ է թէ և յառաջ քան զայն Թուականն ըստ բաւականին շինեալ և քաջ ամրացեալ էր բերդաւըն, թէ և ոչ ստորին պարսպօքն. քանզի յետ քսան ամաց (1211-2) յորժամ եկն այսր իբրև պատգամաւոր և հիւր՝ Վիլպրանտ Օլտէնպուրկեան ազնուատոհմն գերմանացի՝ ընդ դեսպանի դքսին Աւստրիոյ, և եկաց ամսօրեայ աւուրք առ Թագաւորին, զքանչացեալ ընդ վայելչութիւն պէսպէս շինուածոցն և զբօսարանաց՝ գրէր[4]. «Սա է գլխաւոր քաղաք տեառն արքայի, ա» պրնջական անբիւ և մեծատուն բնակչաց, ոչ ունելով » պարիսպս շուրջանակի. վասն որոյ աւան մանաւանդ » քան թէ քաղաք անկ էր ինձ կոչել զայն, եթէ չունէր » աթոռ արքեպիսկոպոսի Հայոց, յորում և Յոյնք հնա» զանդին իւրեանց պատրիարքի: Բայց ունի բերդ 'ի » բարձու 'ի լերինն, կարի քաջ ամրացեալ. յորոյ ստոր» ոտից քաղաքն ինքնին թուի դարաձև աստիճանօրէն » իջանել. և որպէս ասեն՝ էր սա երբեմն եղեալ Դարե» հի, որում յաղթեացն Աղեքսանդր ... Գիտելի լիցի և » այս, զի տէր արքայ առ երի քաղաքիս պատրաստեաց » իւր պարտէզս փափկութեան, զորոյ զվայելչութիւնս » նկարագրել՝ խոստովանիմ անբաւական լինել»: Զանց առնեմ աստանօր զերկար ստորագրութեամբ նորա զմեծահանդէս Ջրօրհնեացն, որ յաւուր տօնի Յայտնութեան կատարեցաւ առ եզերբ ջրոյն Սսոյ: — Ի դէպ իսկ էր Լևոնի նախ քան զայլ շէնս՝ զհռչակաւորն զայն յարդարել բերդ, որ ցվերջ տէրութեան յաջորդաց իւրոց՝ ամուր ապաւինի նոյին եղև, և յետին կռուան և կէտ հայկական թագաւորութեան, ոչ այնքան յաւէտ և 'ի սովոյ՝ որքան 'ի կարճմտութենէ ոմանց մատնեալ առ թշնամիս. այն որ յերկդարեան ժամանակի՝ հանդիսարան եղեալ էր մեծամեծ յաղթութեանց և աղետալի պարտութեանց. ոմանց տեղի պարծանաց և շքոյ, և ոմանց կորանաց և սգոյ. քանզի և արգելան բանտի լինէր երբեմն քրէական յանցաւորաց և ականաւոր արանց. որպէս և անդստին յամի 1193 բանտարգել արար Լևոն 'ի բերդի անդ զձերբակալեալ Բրինձն Անտիոքայ Պեմունդ Գ: Եւ թէպէտ ինքն նաև յայլ գլխաւոր քաղաքս տէրութեան իւրոյ, որպէս 'ի Տարսոն՝ հին մայրաքաղաքն, կատարէր զարքունական հանդէսս և զընդունելութիւն դեսպանաց և նուիրակաց արևելեան և արեւմտեան պետաց՝ մեծաց և փոքունց, և զգունդս (consuls) վաճառական հասարակապետութեանց և քաղաքաց Իտալիոյ,

1 Des ruines romaines encore importantes prouvent qu'une ville existait déjà à cette place du temps de l'Empire Romain. — TEXIER, ASIE MINEURE, 383.

2 Ֆավր և Մանտրոյ, 30:

3 Պէլազօրի պատմիչ աշխարհակալութեանց Արաբացւոց:

4 In die vero, hoc est in festo Epiphaniæ .. pervenimus Sis .. Hæc est » capitanea civitas Domini Regis, infinitos et divites fovens inhabitantes; » nullis munitionibus cingitur: unde potius eam villam quam civitatem » nuncuparem, si sedem Archiepiscopalem Hormenorum in se non haberet: » in qua etiam Græci suo obediunt Patriarche. Castrum vero habet super » se situm in monte, valde munitum; a cujus pede ipsa civitas ordinate et » gradatim discendere videtur: et, ut dicunt, hæc aliquando a Dario rege, » quem Alexander devicit, possidebatur ... Illud etiam scitote, quia Do» minus Rex juxta hanc civitatem hortum deliciarum sibi præparavit; ad » cujus delicias describendas meam confiteor insufficentiam ». — WILLEBRAND.

րանաց նաւհանգին Անաւարզայ գրի Սիս, ըստ այլեայլ օրինակաց, Sisia, Sysia կամ Sisya. Դեսիէ համարէր նշմարել 'ի Սիս հռոմէական հնութիւնս[1]. որպիսի ճանաչի և մասն կամրջին 'ի վերայ Տէլի-չայ գետոյ[2]: Սովիմք դեռևանայ աւանդութիւն Արաբացի պատմչի միոյ՝ եթէ ներքինւոյ պաշտօնէի Հարուն-էր Ռէշիտ ամիրապետի շինեալ իցէ զՍիս յետ Ը դարու և անուանեալ Սիսիյէ. 'ի սկզբան իսկ այնր դարու Սիս անուամբ ծանօթ էր Բիւզանդացւոց տեղին, զոր և յամի 703 Ազիպ կամ Եզիտ որդի Խունէի պաշարեալ էառ և աւերեաց, այլ Հերակլ զօրավար կայսեր՝ հալածեաց զնա: Թէոփանէս որ պատմէ զդէպքս՝ Σισον κάστρον գրէ, Սիս կամ Սիսոն բերդ. իսկ արևելեայք ըստ մեզ կոչեն և գրեն պարզապէս Սիս, سيس: Ի սկիզբն Թ դարու (809) ըստ աւանդութեան Արաբացւոց՝ խոյս ետուն բնակիչք Սսոյ 'ի լերինս, այլ 'ի նորոգել զայն Արաբաց՝ Հայք թողեալ զգեղեցկաշէն քաղաք իւրեանց Խալալ?, եկին 'ի Սիս. և բովանդակ արևելակողմն երկրին մինչև 'ի Հալէպ կոչեցաւ յանուն Սսոյ, յորում էին երեք հարիւր վաթսուն աւանք ամուրք և քսանևվեց բերդք անառիկք[3]: Յառաջ քան զտիրանալ Ռուբինեանց 'ի կողմանքս՝ յամի 1114 (Նոյեմբ. 13) 'ի մեծ սասանութենէ որ դղրդեցոյց զարևելակողմն Կիլիկիոյ՝ անդր քան զԱնտիոք, զՄարաշ և զՌապան, կործանեցաւ և Սիս՝ կորստեամբ « անթիւ արանց և կանանց », ըստ Ուռհայեցի ժամանակագրին մերոյ. որ տայ գուշակել զի արդէն շէն և բազմամարդ էր տեղին: Ի մերազգեաց նախ Թորոս Ա տիրեաց Սսոյ, ըստ Տարտելի, ապա Թորոս Բ, ըստ պատմչին Խաչակրաց. յետ նորա պատմիչք մեր ասեն վասն եղբօր նորին Մլեհի, (1175), եթէ « իշխանք նորա սպանին 'ի Նորաշէն քաղաքն Սիս, » վասն վատ բարուց նորա ». բայց 'ի հնագիր արքունի պատմչին չիք բառդ Նորաշէն: Սակայն ստոյգ նորոգող կամ նորակերտող Սսոյ ճանաչի և է Լևոն Ա թագաւորն, որ ձեռն էարկ 'ի շինութիւնն և յամրութիւնս՝ յառաջ իսկ քան զթագաւորելն. այլ և անդստին յայնմ ժամանակէ՝ թէ ոչ քաղաքին այլ բերդին պարիսպք՝ թէ շատ թէ սակաւ կանգնեալք և անկասկածք երևին. քանզի յասպատակելն Ռստոմ Թուրքմանի յամին 1187 'ի սահմանս Հայոց, ասի, « գնաց մինչև 'ի Սիս, և բնակեցաւ » առաջի քաղաքին յ'Ռահին. և ծածկեաց զերեսս երկ» րին անհամար բազմութեամբ ». յայտ է թէ ոչ իշխեալ յարձակիլ 'ի քաղաքն, որում և չեթող ժամ՝ Լևոն, սակաւաձեռն ջոկատու 'ի վերայ նորա հասեալ և սպանեալ, և զայլսն հալածեալ: Ստուգելի է իմաստ ռահին բառիդ, բարձրաւանդակի արդեօք իցէ, եթէ վտակ ջրոյ, թէ այլ ինչ, յայտնիչ կերպարանաց տեղւոյն: Յետ սակաւուց նոյն ինքն Լևոն հարեալ միւսանգամ զայլազգիսն 'ի սահմանս Մարաշայ,

« Էառ զաւարըս գերողին՝
Զանբան ժողով բանականին,
Էած 'ի մայր իւր քաղաքին
Որ է Սիսուան անմատչելին ».

որպէս երգեաց Գրիգոր Տղայ, որ վախճանեցաւ յամի 1193. ապա յայտ է թէ և յառաջ քան զայն թուական՝ ըստ բաւականին շինեալ և քաջ ամրացեալ էր բերդաւքն, թէ և ոչ ստորին պարսպաքն. քանզի յետ քսան ամաց (1211-2) յորժամ եկն այսր իբրև պատգամաւոր և հիւր՝ Վիլլեպրանտ Օլտէնպուրկեան ազնուատոհմ գերմանացի՝ ընդ դեսպանի դքսին Աւստրիոյ, և եկաց ամսօրեայ աւուրքս առ թագաւորին, սքանչացեալ ընդ վայելչութիւն պէսպէս շինուածոցն և զբօսարանաց՝ գրէր[4]. « Այս է գլխաւոր քաղաք տեառն արքայի, ասպընջական անթիւ և մեծատունս բնակչաց, ոչ ունելով » պարիսպս շուրջանակի. վասն որոյ աւան մանաւանդ » քան թէ քաղաք անուանէր ինձ կոչել զայն, եթէ չունէր » աթոռ արքեպիսկոպոսի Հայոց, յորում և Յոյնք հնա» զանդին իւրեանց պատրիարքի: Բայց ունի բերդ 'ի » բարձու 'ի լերինն, կարի քաջ ամրացեալ. յորոյ ստորոտից քաղաքն ինքնին թուի դարաձև աստիճանօրէն » իջանել. և որպէս ասեն՝ էր սա երբեմն եղեալ Դարեհի, որում յաղթեաց Աղեքսանդր ... Գիտելի լիցի և » այս, զի տէր արքայ առ երի քաղաքիս պատրաստեաց » իւր պարտէզս փափկութեան, զորոյ զվայելչութիւնս » նկարագրել խոստովանիմ անբաւական լինել »: Զանց առնեմ ստանօր զերկար ստորագրութեամբ նորա զմեծահանդէս Ջրօրհնեացն, որ յաւուր տօնի Յայտնութեան կատարեցաւ առ եզերբ ջրոյն Սսոյ: — Ի դէպ իսկ էր Լևոնի նախ քան զայլ շէնս՝ զհռչակաւորն զայն յարդարել բերդ, որ ցվերջ տէրութեան յաջորդաց իւրոց՝ ամուր ապաւինի նոցին եղև, և յետին կռուան և կէտ հայկական թագաւորութեան, ոչ այնքան յահէ և 'ի սովոյ՝ որքան 'ի կարճմտութենէ ոմանց մատնեալ առ թշնամիս. այն որ յերկդարեան ժամանակի՝ հանդիսարան եղեալ էր մեծամեծ յաղթութեանց և աղետալի պարտութեանց. ոմանց տեղի պարծանաց և չքոյ, և ոմանց կորանաց և սգոյ. քանզի և արգելան բանտի լինէր երբեմն քրէական յանցաւորաց և ականաւոր արանց. որպէս և անդստին յամի 1193 բանտարգել արար Լևոն 'ի բերդի անդ զձերբակալեալ Բրինձն Անտիոքայ Պեմունդ Գ: Եւ թէպէտ ինքն նաև յայլ գլխաւոր քաղաքս տէրութեան իւրոյ, որպէս 'ի Տարսոն՝ հին մայրաքաղաքն, կատարէր զարքունական հանդէսս և զընդունելութիւն դեսպանաց և նուիրակաց արևելեան և արևմտեան պետաց՝ մեծաց և փոքունց, և զգունցս (consuls) վաճառական հասարակապետութեանց և քաղաքաց Իտալիոյ,

1 Des ruines romaines encore importantes prouvent qu'une ville existait déjà à cette place du temps de l'Empire Romain. — TEXIER, ASIE MINEURE, 583.

2 Ֆավռ և Մանտրոյ, 50:

3 Պէլաղօրի պատմիչ աշխարհակալութեանց Արաբացւոց:

4 In die vero, hoc est in festo Epiphaniæ . . pervenimus Sis . . Hæc est » capitanea civitas Domini Regis, infinitos et divites fovens inhabitantes; » nullis munitionibus cingitur: unde potius eam villam quam civitatem » nuncuparem, si sedem Archiepiscopalem Hormenorum in se non haberet: » in qua etiam Græci suo obediunt Patriarche. Castrum vero habet super » se situm in monte, valde munitum; a cujus pede ipsa civitas ordinate et » gradatim discendere videtur: et, ut dicunt, hæc aliquando a Dario rege. » quem Alexander devicit, possidebatur . . . Illud etiam scitote, quia Do» minus Rex juxta hanc civitatem hortum deliciarum sibi præparavit; ad » cujus delicias describendas meam confiteor insufficentiam ». — WILLEBRAND.

էջ 215



ՍԻՍ քաղաք եւ բերդ․ ցերեկային լուսով

այլ չիք երկբայել՝ զի հաստատուն կեդրոն ամենայն հանդիսից անդ էր ուր բուն արքունիքն, 'ի Սիս. զոր և մարթ է այնուհետև սիրտ աշխարհին և պետութեանն անուանել. թէ և փոքրիկ, այլ թերևս առաւել եռանդուն և թնդական քան զհին և զմեծամեծ մայրաքաղաքս Հայոց. գէթ ազնուագոյն և նրբագոյն հրաւանգօք և եւրոպական ճաշակօք առաւելեալ. և առանց երկմտութեան կարեմք ասել զայն յիւրումն ժամանակի՝ գերագոյն շաղկապ երկադէմ քաղաքավարութեան արևելից և արևմտից. նոյնպէս և ըստ կրօնական կամ ծիսական տեսութեան. զի յաւուրս Լևոնի յելս ԺԲ դարուն եղև հաստատ և յայտնի դաշն միաբանութեան Հայոց ընդ մեծի եկեղեցւոյն Հռովմայ, յորմէ ընկալաւ զդրօշ Ս. Պետրոսի՝ 'ի նշանակ ուխտին և թագաւորութեանն: Թերևս ոչ բաւեցին մեծոգւոյ թագաւորին երեսուն ամք իշխանութեան՝ յամբոկ հանել զվայելչութիւն շինութեանց մայրաքաղաքին, և եթող լրացուցանել ծանօթ և անծանօթ յաջորդաց իւրոց (Զապելի և Հեթմոյ Ա). յետին և անգլին աւանդ 'ի նմանէն՝ խորհեցեալ երախտագէտ իշխանացն պարգևել ձեռակերտի նորին սիրելւոյ՝ զպատուականագոյնն 'ի թողլիս, զմարմին իւր. զորոյ, (քանզի կամէր ինքն թաղիլ յԱկներ վանս, անդ զփորոտիսն ամփոփեալ), ասէ բերեալ հանգուցին զմարմինն 'ի տապանի՝ յիւրակերտ եկեղեցւոջ միում. կամ ըստ Վահրամայ Րաբունոյ,

« Մասն ինչ 'ի Սիս քաղաք բերեալ,
Եւ 'ի վերայ տաճար շինեալ »:

83. Քանի՜ ինչ մեծագործ և մեծավայելուչ էր յայնժամ Դարպասն թագաւորաց, (զի մինչև ցարդ այսպէս կոչին Մնացորդք արքունի ապարանիցն՝ 'ի հիւսիսակողմն քաղաքին). մարթ է գուշակել մտօք՝ որոց ծանօթ լիցեն աւագութեան և աւագաւորութեան Լևոնի և քառասնամեայ բարեբաստութեան Հեթմոյ, կամ մանաւանդ ութսնամեայ շինութեան և օր ըստ օրէ բարգաւաճանաց ոստանին, 'ի սկզբանէ տիրապետութեան Լևոնի (1187) ցամն 1266, յորում առաջին և մեծ աւերն ածաւ յԵգիպտացւոց. զի յետ մարտին Մառեայ և գերութեան թագաժառանգին Լևոնի, եկեալ և կացեալ 'ի Սիս « աւուրս ինչ, յաւարի առին զքաղաքն. և ապա հուր եդեալ յամենայն շէնս՝ և հրկէզ արարին առ հասարակ. » և գերելոցն և սպանելոցն ոչ գոյր թիւ. և պատերազմեալ 'ի վերայ բերդին, և նեղէին տալ զբերդն. և նոքա ոչ առին յանձն. իբրև տեսին անօրէնքն թէ ոչ » կարեն առնուլ բերդին՝ առ հասարակ զլեռնակողմն » և զդաշտն հրկէզ արարեալ՝ աւերեցին [1] »: Հաւաստեաց աստանօր բերդն զամրութիւն իւր և զանմատչելի դիրսըն. այլ, աւա՜ղ, ստորանկեալ քաղաքին, որ թէպէտ և դարձեալ երկիցս և երիցս շինեցաւ և զարդարեցաւ, այլ ոչ ժամանեաց յառաջինն չափ, և ոչ ևս երևեցան լեռնահիմն և հեթումաշէն պայծառութիւնքն. աւաղելի ևս, զի ոչ հանդիպեցաւ մեզ ընտանի ոք Սմբատ կամ օտար Վիլպրանտ՝ որ աւանդէր զզանազան կերտուածս ապարանիցն և եկեղեցեաց և պէսպէս կարևոր շինուածոց, այլ միայն վիպողք և ողբացողք աւերանացն. յորոց մի ոմն՝ որ չէր բնիկ Կիլիկեցի՝ այլ կեցեալ ոչ սակաւ ժամանակս յարքունիս, և խոհականագոյն 'ի պատմիչս ժամանակին, Մեծն անուանեալ Վարդան վարդապետ Արևելցի, ասէ վասն զօրագլխին Եգիպտացւոց Սմլօթ կոչեցելոյ. « Ցանպատրաստից մտեալ յաշխարհն՝ առնու » զՍիս մայր քաղաքաց՝ զարքայանիստն. այրէ զնա եկեղեցեօքն որ 'ի նմա. և գտանէ զոսկեն զեռնեաւոր » զանձուցն, և առնու յոյժ բազում. զոր 'ի միում ամանի լինել ասեն վեցհարիւր հազար կարմիր [2] »: Իսկ զուգաժամանակ Նորին Մաղաքիա ասէ. « ԶՍիս քաղաքն » այրեցին, որ էր նստոց թագաւորին Հայոց. և զգովելի » մեծ եկեղեցին՝ (Ս. Սոփիա) որ 'ի մէջ նորուն՝ փայտ » ձգեալ այրեցին. և զշիրիմս թագաւորացն քակեցին [3]. » և զբազումս կոտորեցին 'ի քրիստոնէիցն, և զբազումս » գերեցին 'ի յերկրէն և 'ի գիւղորէիցն »:

Արդ քանզի 'ի նախնեաց չեհաս մեզ աւանդութիւն զշինուածոց Սսոյ, երկրորդեսցուք 'ի նորոց զբազմերախտ Ինճիճեան Հօրս գրեալն՝ ութսուն ամօք յառաջ յիւրումն Նոր Հայաստանի, զոր լուեալ էր յականատեսաց և 'ի ծերոց. « Նախնի Ապարանք թագաւորաց Ռուբինեանց » կամ որպէս կոչեն Դարպաս, որ է բոլորակաձև շինուած յահագին կոփածոյ վիմաց. իւրաքանչիւր վէմք » երեք և չորս գրկաչափ մեծութեամբ, առ հասարակ » մածուցեալք կապարաւ. ունի զերիս դրունս, 'ի հիւսիս, » յարևմուտս և 'ի հարաւ. իսկ յարևելեան կողմն ունի » երիս մեծամեծ պատուհանս, յորոց միջինն է բոլորաձև, » 'ի վերայ երեցունց դրանց գտանին քանդակագործ » զարդք 'ի վիմի՝ արուեստագործ դրօշուածովք. ընդ մի » դուռն մարթ է ելանել 'ի տանիս ապարանիցն, ուստի » երևին առ բարձրութեանն ամենայն շրջակայ սահմանք: Այժմ լքեալ կան այս ամենայն շինուածք, և » զկապարսն քակեալ առնուն Հագարացիք 'ի պէտս » իւրեանց, նաև զվէմսն իսկ 'ի բաց տանէին եթէ գոյր » հնար: Ցարևմտեայ կողմն պալատիս յերկիր անկեալ » կան երեք և չորս մեծամեծ սեաւ սիւնք մարմարիոնեայք: Իբրև քարընկեց մի հեռի 'ի պալատէս բղխէ » ջուր, յորոց [4] մին է քաղցր, ընդերկրեայ ճանապարհաւ » ածեալ անդ, իսկ միւսն լեղի: — Ի մէջ անդ պարսպին » է և Բաղնոն, բայց արտաքոյ շինութեանց. տեսանի » անդ վիմափոր այր մեծ առ Ասմնձուկ վտակաւն, որ » կարէ տանիլ ոգիս իբրև երկու հազար. բնակիչք կոչեն » զայս այր Կկօվէրճինլիք, քանզի անբաւ բազմութիւն » վայրի աղաւնեաց դադար ունին 'ի նմա. առաջի այրին » է պարիսպ թանձր որ ունի դուռն փոքրիկ, ընդ որ

1 Այսպէս Պատմիչն Կիլիկեցւոց:

2 Եթէ չիցէ սխալ 'ի թուիդ՝ մեծ է յոյժ գումարն, ըստ նիւթական արժէից ոսկւոյ, վեց կամ եօթն միլիոն ֆրանգ, այլ ըստ յարգի ժամանակին՝ եօթնպատիկ առաւել արժէր:

3 Բաց 'ի Լևոնէ չկայր այլ թագաւոր կացեալ և վախճանեալ յայնժամ, բայց եթէ արքունի և մեծատոհմ արանց շիրիմք իցեն:

4 Ի դէպ էր ասել յայլ և այլ ականց, կամ թէ այլ և այլ ակունք ջուրց էին:

» միայն մարթ է մտանել յայրն։ Առաջի դրանս է վայր » տափարակ և 'ի նմա լուսամուտ ուստի երևին գետնա- » փոր շինուածք. որով տափարակ վայրն է տանիք նոյն » շինուածոց. զմանէ ասեն լինել նախնի բանտն Սսոյ, » և կամ մանաւանդ տուն գանձուցն յիշատակեալ 'ի » Վարդան պատմագրէ »։

Զարդիս դոյզն ինչ նշխարք ևեթ որմոց մնան արքու- նական ապարանիցն. չերևի բոլորաշէնն, այլ մասն մի լոկ քառակուսի պարսպին, յորում շինեցաւ 'ի սկիզբն դարուս Նոր կաթողիկոսարանն, մասամբք քարանց հին շինուածոյն։ Իսկ Բերդն պանծալի, որ իբր ժամաչափ դժնդակ վերելիւք' 'ի բարձու քարալերինն կայ, յքեալ և ամայի, տակաւին կանգուն է բազում մասամբ. ըստ ձե- ւոյ գագաթանն' երկայնաձև զառիվայր, երիւք դրամբք, բրգամբք և նետակալօք, անհաւասար պարսպօք' ըստ բարձրութեան և ցածութեան տեղւոյն. և ըստ կատա- րածի գագաթանն' յերիս մասունս կամ շինուածս տրո- հեալ, այլ քարակտուր փողոցօք միացեալ. 'ի հարաւա- կողմանն ամրանայր ակառնն կամ բուն դղեակն, զոր և ներքին կլայ 'ի դէպ է կոչել, ըստ սովորութեան Հայոց, (ըստ արևմտեայց donjon). 'ի միում 'ի սենեկացն երե- ւի դոյզն մնացուած արձանագրութեան.

## Ի Թուականիս Հայոց . . . . . Հեթմոյ Թագ . . . [1]

Առ երի դղեկիս սանդուղք տանին 'ի ջրամբար, և մերձ նմին մուտք 'ի գետնափորս։ Ի միւսում կատարի կան աւերակք մատրան յամրակառոյցն շինուածի. յերրոր- դումն' փոքր ջրշեղջ մի անապակ և անպակաս ջրոյ, զոր և բժշկարար ասեն։ — Այնքան 'ի պատուի էր բերդս առ Թագաւորօք տերամբք նորին, վասն անքոյթ և ան- առիկ ամրութեանն, մինչև ուրումն 'ի նոցանէ' 'ի յետ- նոցն (այն է Կոստանդին Բ), ոսկի դրամ հատանել պատ- կերաւ նորին, և զնոյն ինքն զբերդն Թագաւոր հռչակել, այսպիսի վերտառութեամբ [2].

### ՍՍՈՅ ԲԵՐԴՆ Է ԹԱԳԱՒՈՐ·



54. Ոսկի դրամ Կոստանդի (Բ) թագաւորի.

Ցաւէ', զի ցարդ չեհաս 'ի ձեռս մեր որոշակի և ման- րամասն ինչ պատկեր բերդին Սսոյ, կամ ձևքն ճար- տարապետականք. զորոց մանաւանդ կմբաձև շարս քա- րանց' ոչ ինչ նուազեալ գեղով քան զվայելչագոյնս 'ի յունականացն կերտուածոց' համարէր Դեսիէ [3]։

Ի հարաւային ծայր քաղաքին է Հին Կաթողիկոսարանն, որ և Թուի յառաջագոյն եղեալ արքեպիսկոպոսարան, տուն եպիսկոպոսարանին կոչեցեալ 'ի Ստեփանոսէ Ուռ- պելեան, և «մերձ 'ի քաղաքն Սիս», և անուանէր Գըլ- խիքացի, թերևս վասն ձևոյ վերնայարկին։ Ցայտ է զի յետ առմանն և աւերման Հռոմկլայի' փոխեցաւ այսր աթոռն կաթողիկոսական, յաւուրս Բ Հեթմոյ, յամի 1294. և մտերիմ նորա Գրիգոր Անաւարզեցի եկաց ա- ռաջին 'ի նորահաստատ գահուն, որում 'ի դէպ էր ար- քունավայել լինել. թէ և նուազեալ էր յայնժամ Թագա- ւորութիւն Հայոց, այլ ոչ քան զհաւ իւր նուազ մեծոգի ոք էր Հեթում Բ, միանգամայն Թագաւոր և ճգնաւոր։ Եկեղեցի Կաթողիկոսարանին նուիրեալ էր Ս. Գրիգորի Լուսաւորչի. այլ հանգոյն արքունական ապարանիցն ա- ղարտեալ և քայքայեալ և սորա' հանդերձ շուրջ շինուա- ծովք և բնակարանօք միաբանակեցացն, յանցելում դա- րու գրեաթէ վերստին շինեցաւ 'ի Ղուկաս կաթողիկո- սէ, յամի 1734. զի հայր նորա Տէր Յուսիկ յԱջապահից զարմէ' շնորհս գտեալ առաջի մեծի վզրկին Օսմանեանց, էառ հրաման շինութեան, և զորդի իւր ամբարձ յաթոռ կաթողիկոսութեան։ Ցանուն Սրբոյ Լուսաւորչին կոչե- ցաւ նորաշէն եկեղեցին' եռախորան, որ արդ 'ի դպրոց փոխեալ է. առաջի աջակողման սեղանոյն հանգուցեալ է շինողն Ղուկաս, այսպիսի տապանագրաւ (ըստ ընդ- օրինակութեան Լանկլուայ).

**Այս է տապան Հայոց սրբալանի [4] Կիլիկեցի վեհապետ տէր Ղուկաս Կաթողիկոսին որ եւ հանգեաւ մեծ Թվին ՌՃՂԹ, ամսեան . . օր շաբաթու.**

1 Լանկլուա ընթեռնու եւ Հեյս. ուշրահ... հէ (Հայոց աշխարհի?)։

2 Քանզի Ա Կոստանդին Թագաւոր որդի Բ Լևոնի' սակաւ ինչ ժամանակ Թագաւորեաց, և յետին անուանեալն Կոստանդին' յանձնեցեալ ժամանակի եկաց, 'ի դէպ է թէ Բ Կոստանդին որդին Պաղտին մարաջախտի (1343-65) եհատ զդրամս զայս. զուցէ առ նշանակէ ամանց' որք բանաւոր համարէին զնա, և եցոյց զի բուն Թագաւոր' պահող Թագաւորութեանն' է Բերդն Սսոյ, և նմա կացցեն պատկառ որք ոչն հաւանին ինքեան' որ Սսով և 'ի Սիս Թագաւորէր։

3... Dont l'appareil à bossage ne le cède en rien aux plus beaux ouvrages grecs. — Texier, L'Armenie, I. 105.

4 Լանկլուա Սրբոյն. խաանակ իմն ունի և զվերջին մասն. « Թվին ՌՃՂԹՆ վեց ու 'ի ամսեան . . . օր շաբաթու երեքն »։

Ի ժամանակն են անձուկ գերեզմանք այլոց կաթողիկոսաց յերի երերաց, որոց արձանք են այսոքիկ.

Ա. Այս է տապան Յովհաննիսին,
Կիլիկիոյ կաթողիկոսին
Էր ի գեղջէն կոչեալ Հաճին.
Որ և հանգեաւ ի թվականին
Հազար հարիւր եօթանասնին
Ի յամսեանն դեկտեմբերին։ (1721)

Բ. Յայս տապանս կայ եդեալ Տէր Միքայէլ մեծն ընտրեալ.
Սա վսեմագոյն վերաբերեալ Յուսական է՞ վերակոչեալ.
Թուին Ռ և երկու ՃԷ հանգստիւ 'ի տէր հանգեալ։ (1758)



54. Բերդ Սսոյ, ըստ լուսագրութեան Favre եւ Mandrot քննողաց.

Գ. Է այս տապան ամբիծ վեհի
Թէոդորոս կաթողիկոսի
Որ 'ի զարմէ Աջապահի
Ընտրեալ բևրուց...
Եւ բազում ջանս անձին կալեալ
Նորոգութեան սրբոյ Գահիս
Եւ բարի վարուք փայլեալ
. . . . . . . .
Հանգեաւ թվոյս հազարեկլի
Եւ ՌՃ ընդ քառասնի։ (1791)

Ի սկիզբն դարուս (1810) Կիրակոս Ա. կաթողիկոս փոխեաց զնիստն յընդարձակ տեղի արքունի ապարանից. ըստ ղաւիլեր գրեց տեղւոյն եռանկիւնաձեւ պարսպեալ և չինեալ այլ և այլ դստիկոնս. զմին՝ երեսրացիւ 'ի բընակարան կաթողիկոսի, և 'ի վերայ նորա նոյնպէս երեսրաց դահլիճ իմն խաչաձեւ՝ ժողովատեղի կամ հանդիսարան, ճոխազարդ այլ ոչ վայելուչ, բաց 'ի հին եկեղեցւոյ Ս. Սոփիայ, զոր Նորոգեալ կոչեաց՝ յանուն Ս. Գրիգորի Լուսաւորչի. և այժմ անդ հաստատեալ է կըճեայ դահ կաթողիկոսին՝ չինեալն 'ի Սիս։ Ի վերայ մեծի դրան եկեղեցւոյն արձանագրեալ է յիշատակ Նորակերտող կաթողիկոսին, այսպէս.

Գուեն եմ մըտից ի լոյս վերին
Լուսոյ փառաց խառնարանին.
Ձի աստ խառնի մաքուր գինին,
Լինի զենումն անմահ գառին
Հաստեցելոյ սեամբ՞ չնորհին
Նոր կառուցելոյ բոլորվին.
Թէ ես թէ չէնս արդեամբ Վեհին
Հիմնեցելոյ ի բան վերին
Տէր Կիրակոս սրբազանին
Եւ հոգելից հայրապետին.

*Ի թուին Հայոց ՌՄԾԹ մայիս Ժ օրն*
*Սուրբ շինուածոյս վերականգնի*
*Եւ այլ սենեակս ընդ պարսպի*
*Մեծաւ ջանիւ կատարողի,*
*Ի Հայոց գրոցն թուահաշուի.*
*Այսքան ամօք աշխատողի*
*Արիաջան փոխանորդի*
*Ընտիր Վեհիս Կիրակոսի*
*Տէր Եղիա եպիսկոպոսի*
*Որ է տեղեաւ Խարբերթացի*
*Յիշման անունն է արժանի:*

*Կաթողիկոսն Կիրակոս ամբաստանեալ 'ի յաչաղկոտաց վասն շինուածոցս, որպէս թէ աշտարակ ամրութեան կառուցանէր, համարելով և համախոհ Զէթունեաց ձերբակալեալ առաքեցաւ 'ի Կ. Պօլիս. այլ բարեխօսութեամբ ազգայնոց արդար ցուցեալ՝ դարձաւ յաթոռ իւր (1819). սակայն յետ ամաց (1822) ապստամբն Քօզան-օղլու դեղ մահու արբուցեալ զրաւեաց զնա 'ի կենաց. և թաղեցաւ յԻւրաշէն եկեղեցւոջն: — Ի գանձատան տաճարիս պահին սպասք սրբութեան, յորս գլխաւորք են չորեքին Աջք, Ս. Գր. Լուսաւորչի, Նիկողայոսի, Սեղբեստրոսի և Պարսամայ. 'ի դարուց հետէ սեփականեալ էին սոքա 'ի պահ զգուշութեան տոհմի միոյ, որ յայն սակս կոչեցաւ Աջպահեան, և 'ի նմին զարմէ յաջորդեցին կաթողիկոսունք յ'ԺԸ դարու. — Ոսկէզօծ արծաթեայ տապանակ և մեծաշէն անօթ մեռոնի, նուէր Կ. Պօլսեցի Տիւզեան տոհմին. — Եմիփորոն մի հին ծիրանի բազմախաչ և բազմապատկեր, կազմեալ 'ի Բերիա, որպէս թուի, յամի 1634, վասն Յակոբայ եպիսկոպոսի, յորում ոսկեթել հիւսեալ է բանս.* « Կազմեցաւ 'ի Թուականիս մերում Ռ եւ Ձգ [1] ամին. Աստուած ողորմեա ասացէք աշխատողաց սորին. ամէն. — Նկարեցաւ էմիփորոնս 'ի քաղաքն 'ի Հալապ 'ի վայելումն տէր Յակոբ քաջ րաբունապետին, զոր սէր Աստուած մեր բարով վայելել տացէ. ամէն »: —

*Ընդ հինս են և նոր սպասք և նուէրք ընծայեալք 'ի Նիկողայոսէ կայսերէ Ռուսաց, և յեկաց ոմանց. զի և գիտնական ուղևորք յայց ելին տեղւոյս, որպէս և ծանօթ բուսախոյզն Քոչի, որ և ազաւ աստ 'ի 6 մայիսի, 1859: Բազում ինչ 'ի սպասուց և գանձուց աթոռոյն ասի կողոպտեալ 'ի յետին ամքս՝ յառաջ քան զաթոռակալութիւն վերջին կաթողիկոսին (Տ. Մկրտչի):*

86. *Զամս հարիւր և յիսուն աթոռս Սսոյ եղև գահ ընդհանրական հայրապետի Հայոց (1293=1441), յաջորդութեամբ ութևտասն կաթողիկոսաց. առ որովք՝ մանաւանդ ցկէս ԺԴ դարու՝ ստէպ և երկար թղթակցութիւնք, միաբանութիւնք և անհամաձայնութիւնք եղեն ընդ գերադրական գահուն Հռովմայ, երկբայք և վէճք զհաւատոյ և զծիսից, որպէս յայտ է ամենեցուն [2]. զոր խափանել իմն ջանալով ոմանց արևելեայ վարդապետաց Հայոց, ըստ այլ ևս դիտմանց, որպէս և 'ի դիւրագոյն հոգևորական տեսչութիւն ազգին՝ մեծագոյն մասամբ 'ի բնիկ հայրենի աշխարհին եղելոյ, հաստատեցին գերագոյն գահ կաթողիկոսական յէջմիածին, որով յերկուս բաժանեցաւ իշխանութիւնն. և այս չորք և կէս դարք են յաջորդելով և 'ի Սիս անխափան, 'ի Գրիգորէ Մուսաբէկենց՝ առ որով եղև բաժանումն, մինչև ցարդ՝ կացեալ են անդ քառասուն և չորք կաթողիկոսք, և են.*

1440. Գրիգոր Ա. *Մուսաբէկենց.*
144?. Յովսէփ [3].
1447. Կարապետ *'ի Սսոյ.*
1449. Ստեփանոս *'ի Սարաճորոյ.*
1474. Յովհաննէս Ա. *յԱնտիոքայ.*
1489. Յովհաննէս Բ. *Թուլկուրանցի կամ Թլկուրեանց.*
1525. Յովհաննէս Գ. *'ի Քիլիսոյ, Կայծակն կոչեցեալ.*
1539. Սիմէոն Ա. *Ուլնեցի կամ Զէթունցի.*
1545. Ղազար *Ուլնեցի.*
1548. Թորոս Ա. *որ և Թէոդորոս Թոռասն, 'ի Սսոյ.*
1551. Խաչատուր Ա. *Զորիկ կոչեցեալ.*
1560. Խաչատուր Բ. *կամ Խաչիկ Ուլնեցի, Երաժիշտ.*
1584. Ազարիա *Ջուղայեցի* [4].
1586. *Տիրատուր* *.
1588. *Յովհաննէս* *.
1601. Յովհաննէս Դ. *Անթապցի.*
1602. Պետրոս *Կարկառեցի.*
1627. Մինաս *'ի Կարնոյ.*
1633. Սիմէոն Բ. *Սեբաստացի կամ Արևելցի.*
1648. Ներսէս *'ի Սեբաստիոյ.*
1654. Թորոս Բ. *'ի Սսոյ.*
1658. Խաչատուր Գ. *Մինտէրճի, 'ի Սեբաստիոյ.*
1663. *Դաւիթ Բերիացի կամ Կարկառեցի* *.
1679. Սահակ *Մէյխանէճի.*
1683. Ազարիա *Ղաթրամի, Կարկառեցի.*
1689. Գրիգոր Բ. *Ադանացի, Պիժակն կոչեցեալ.*
1691. Աստուածատուր *Նարին, Սսանեցի.*
1694. Մատթէոս *Սարի, Կեսարացի.*

1 *Ընդօրինակողքն՝ ՌՁԳ ընթերցեալ են, այն է 1234, որ անհաւան երևի ինձ:*

2 *Որպէս և արժանն պահանջէր՝ թուի գրութեանցն եղելոց վասն իրացս այսոցիկ՝ հաւաքեալ 'ի մի գիրս կամ Դիւանս. և զայս կարծեմ Զօրաբեան անուանեալ 'ի Մխիթարայ Ապարանեցւոյ. այլ ոչ իմանամ զստուգաբանութիւն կոչմանն, և ոչ զգիրսն ճանաչեմ, բայց միայն զթուղթս ինչ Քահանայապետաց Հռովմայ և զակաւս 'ի պատասխանեաց, և զհանգամանս ժողովոց երկուց կամ երից:*

3 *Մաղաքիա Դպիր կարգէ զսա 'ի շար կաթողիկոսաց Սսոյ: Նոյն յետ Ստեփանոսի երկու Յովհաննէս միայն դնէ:*

4 *Սա յետ փորձանաց՝ 'ի Հռոմ եկեաց և վախճանեցաւ, որպէս և Մատթէոս Սարի՝ դեգերեալն 'ի հաւատս՝ յերկիզէ ապանման 'ի ժամանակի նահատակութեան Տեառն Կոմիտասայ* (1707):

* *Աստեղանիշքդ ոչ համարին օրինաւոր կաթողիկոս:*

1701. Պետրոս *Բերիացի*.
1719. Յովհաննէս Ե. *'ի Հաճնոյ*.
1727. Գրիգոր Գ. *Ուղուրլի, Կեսարացի*.
1730. Յովհաննէս (*Տէր Ադամ*) Զ. *Հաճնեցի*.
1734. Ղուկաս *Սսեցի* (*Աջպահեան*).
1737. Միքայէլ, *եղբայր Ղուկասու*.
1757. Գաբրիէլ, *եղբայր Ղուկասու և Միքայելի* [1].
1771. Եփրեմ *Սսեցի, եղբօրորդի երեցուն վերնոցն*.
1784. Թէոդորոս Գ. *Սսեցի* [2].
1801. Կիրակոս Ա. *եղբօրորդի Թէոդորոսի*.
1822. Եփրեմ, *ութևտասնամեայ, հրաժարեալ 'ի* 1833.
1833. Յովհաննէս Է.
1846-8. Միքայէլ Բ.
1853. Կիրակոս Բ [3].
1866. Կիրակոս Գ. (*Տէր Նիկող.*), *վերջին Աջպահ* [4].
1871. Մկրտիչ, *Քէֆսիզեան, Մարաշցի* [5]:

*Քանզի բազում անգամ յիշեցաւ Աջպահից տոհմն, արժան համարիմ յիշել աստանօր, զի Եփրեմ կաթողիկոս գրելով զպատմութիւն կաթողիկոսաց Հայոց, առանձին խնամով գրէ և զիւրոց նախնեաց. բայց սխալէ յոյժ նախահաւ իւրոյ տոհմին ասելով զՅովհաննէս եպիսկոպոս եղբայր Բ Հեթմոյ և որդի Բ Լևոնի, որպէս համարի. այլ նոցա չէ եղեալ այդպիսի որդի կամ եղբայր. և ոչ է շփոթել ընդ Յովհաննու եպիսկոպոսի եղբօր Ա Հեթմոյ, որոյ չէր մնեալ 'ի կարգ աշխարհի, և զայս որոշէ և ինքն Եփրեմ: Դարձեալ սխալէ՝ 'ի Յովհաննէ անտի ազգապետէ Աջպահից ցՄինաս Թոռն Թոռին Նորա* († 1613) 300 *ամս ժամանակի տալով. ապա հարկ է թէ Յովհաննէսն այն եպիսկոպոս նախահաւ իւր, ո ոք և իցէ, ոչ 'ի սկիզբն ԺԴ դարու, այլ ԺԶին կամ գէթ 'ի կէս ԺԵին կացեալ իցէ. և այս են սերունդք նորա ցտասն ազգ. զյետինսն՝ որ յայսմ դարու կացին՝ անգիտանամ.*




1 Յանօրինաց լեռնականաց սպանեալ սա յամի 1770 ('ի 10 սեպտեմբ.) որպէս գրէ եղբօրորդին նորա և յաջորդ Եփրեմ, յաւարտ Մեկնութեանն [illegible], և յաւելու. «Ի վաղիւն յորժամ զշաբաթացեալն 'ի կենաց հանգուցաք 'ի դիրս հանգստեան՝ յաւուր շաբաթու, » դարձ առին նոյն արիւնարբու գազանքն, խիզախելով 'ի վերայ մեր. » և զօրն ողջոյն խոշտանգելով, զայս ինչ պահանջելով կամ զայն ... » և մինչ յայս վտանգ կայաք տագնապեալ և կոչկոճեալ՝ ոչ պակաս » քան զաւուրս տասն, մանաւ ակն կալեալ քան կենաց, անդէն կըր-» կին հէնք և առապատակմունք անդր առաւել քան զնախորդ պաշա-» րումն նոցա, աւելի քան զքսաներիւր արս արիկայս և արեանածա-» րաւս. և առ այս 'ի ծուփս մեծ անկեալ՝ այնուհետև 'ի գերեզման վար-» կէաք զմեզ. քանզի ոչ գիտ ևեթ, այլ ազգատ առնել զմեզ խոր-» հէին: Եւ մինչ այսպէս սպառեցան առ 'ի մէնջ բարիքն ... շրջեաց » (Աստուած) զախտս նոցա 'ի քաղցրութիւն, և զխորհուրդս նոցա » չար՝ 'ի բարի. ոչ բոլորքն միանգամայն, այլ երևելիք ոմանք 'ի նոցա-» նէ. և այսպէս ժամ գտեալ մեր հանդերձ հարբ խմով ընդ մարմնոյ՝ » Մարկոս անուն Աջպահ քահանային, որ է եղբայր եռամեծի հայ-» րապետին, անկաք 'ի ճանապարհ, որ առաջնորդեալ բերէր զմեզ » յաստուածապահ քաղաքն կոչեցեալ Ատանայ. բայց մնաց 'ի Սիս » հարազատն իմ ընդ մարմնոյ Գրիգոր անուն դպիր, հանդերձ եռեակ » աւեղամբքն իւր. ևս և բոլոր աթոռայինքն անդ 'ի սուրբ աթոռն», և այլն. ուր դարձաւ և ինքն Եփրեմ յետ սակաւուց՝ կաթողիկոսական ընտրութեամբ. և կացեալ իբրև ամս չորեքտասան, հանգոյն հօրեղբօրն էառ վախճան, սպանեալ 'ի բանակալէն Սսոյ:

2 Ըթէ վախճանեալ է սորա յամի 1791, ըստ վերայգրեալ տապանագրի, ապա Կիրակոս յաջորդեալ է յառաջ քան զ'ԺԹ դար:

3 Ոչ գիտեմ յորում ամի կացեալ է կաթողիկոս:

4 Հրաժարեալ, և վախճանեալ յամի 1880:

5 Գահակալէ 'ի 27 հոկտ.=8 Նոյեմբերի. և հաւչակի արդ 'ի ժամանակի գրութեանս, վասն եղանակի վարմանն ընդ Պատրիարքական Աթոռոյն Կ. Պօլսի:

6 Կոչի սա Հոխպոչ Սսեցի, ոչ գիտեմ վասն որպիսեաց բանից:

Թուի պակաս կամ չփոխ ինչ յազգաբանութեանդ. քանզի գտանեմ 'ի կուան մատենի միոյ զինքնագիր յիշատակարանս այս յամի 1741. « Ծառայ Աստուծոյ և ամե֊
» նայն սրբոց Նորա ես Սըսցի Աջրանի որդի Եղիազար
» վարդապետս և հայրն իմ տէր Մկրտիչն եկայք 'ի մեծ
» քաղաքն Կեսարիայ, 'ի Ս. Աստուածածին յեկեղեցին։
» Այս եղև թվին ՌՃՂ, սեկտեմբեր ամսոյ ԺԵԻ, պատ֊
» կեր աւուրն Սուրբ Խաչին. ամէն. Աստուած Հաստատ
» պահէ զԿեսարացիք, զբազում երախտիքն տեսաք.
» Տէր Յիսուս ինքն հատուսցէ զփոխարէնն. ամէն »։
Թերևս Գ Եղիազարու թոռն իցէ վարդապետս այս Եղիազար, կամ 'ի Մինասայ սերեալ։ — Զատ յարձակ Պատմութենէն՝ արարեալ է Եփրեմի և չափաւ՝ գիրս տոհմին, այլ թերի մնացեալ, գէթ ըստ օրինակին՝ զոր ոչ անդէպ վարկանիմ հրատարակել 'ի ստորև, 'ի յիշատակ կաթողիկոսին այնորիկ բանասիրի և իւրոյ տոհմին, միանգամայն և վասն պատմական ինչ դիպաց [1]։ 16 Թեմք են Սսոյ՝ 'ի Կիլիկիա, 'ի Փոքր Հայս և յԱսորիս։

միայն երգք ինչ նորա ծանօթ են ինձ, յորոց մին Գովեստ Երուսաղեմի գրեալ յամի 1635, որոյ անագլուխ տաղք կազմեն զբանս՝ Յովհաննէս Քահանայի տալ եալ է, և սկիզբն է.

« ՅԱստուծոյ շինեալ քաղաք պատուական,
Ցանկալի զուարթնոց եւ որդւոց մարդկան.
Ըղձեկզ նորոգեաց Դաւիթ մեծ արքայն,
Սուրբ Երուսաղէմ, քաղաքդ աննըման »։

Այլ տաղք նորին. Ի Գարուն. « Գարունն է բացուել.
Վասն թշուառութեան ազգիս. « Ականջդ բաց, զբանս լսէ.
Մարգարէից. « Մովսէս ասեմ ըղհրաշալին.
Կոստանդնուպօլսի նկարագիր. « Այս տաղ չափական.
Սիրոյ. « Դժար գովար.
Գինւոյ. « Ասաց Դաւիթ։

[1] Երիւք ամօք զկնի վախճանին Եփրեմի (1787), ոմն յաշակերտաց նորա՝ Խաչատուր անուն՝ բերեալ է 'ի վանս մեր ('ի Ս. Ղազար) զխակական ձեռագիր Տեառն իւրոյ, և այնր ժամու Հարց ուխտիս ընդօրինակեալ. որ է այսպէս.

Բարք է բնարար առ բանական
Սեռըս՝ ներհուն գոլն ըղձական,
Նախանձելոյ վիպագրութեան
Եւ անվրէպ զրուցաց ըղբան.
Եւ մանաւանդ զիւրական
Նախնեացըն վէպ կարգել արձան։
Յերիս հատեալ բաժանեցան
Ամանակաց թիւք կարգեցան,
Յանցեալըն, ներկայն և յառապայն,
Որովք լրանայ այս յաւիտեան։
Արդ ներկայիս իղձք գիտութեան՝
Ոչ նեղէ զոք խըստիւ այնքան,
Դատարկախօսից դառն քըննութեան.
Եւ ապառնեաց գիտելոյ ջան,
Գրեալ կնքեցաւ միանգամայն
Ի հրեշտակաց և 'ի մարդկան.
Որպէս է բանըն տէրունեան,
Թէ ձեզ որ չէ այս գիտական.
Հայր եդ յիւրում իշխանութեան,
Ցայտնել և ոչ ումեք արժան։
Իսկ անցելոց իրաց ըղբան
Եւ եղելոցըն պատմութեան՝
Լինել սիրող է բընական
Իմաստասէր ազգ բանական։
Որպէս և իմ եդեալ ըղջան,
Եփրեմ անուն անձն անարժան,
Կաթուղիկոս հայկազնեան,
Լինել սիրող այսըմ գրութեան։
Այսու ըղձիւ սիրալըական
Վառեալ երբեմն երջանիկն այն,
Բանիւ մատչէր թախանձական
Խօսիլ զնախնեացըն իւրական.
Դնէր առաջի զգութն հայրական
Եւ ոչ ձըգել յետ կոյս ունկան.
Զհայրն իմ ասեմ զմեծ քահանայն
Մարկոս անուն այն սըրբաբան.
Ուստի և իմ փոյթ և ըղջան
Ցանձին կալեալ միանգամայն՝
Աջապահիցըս պատմութեան,
Եղէ գըրող յաւէտ յայնժամ,
Բայց ոչ բանիւ ինչ չափական,
Եւ կամ տաղիւ հոմերական,
Այլ յոճ արկեալ շարագրութեան
Առ 'ի թողուլ յետնոց արձան։
Այլ և հայրն իմ այն սրբաբան՝
Ցիշատակաց բարեաց արժան,
Լինէր խնդրող այնպիսական
Մեզ հետևիլ բանից գրութեան.
Որպէս և է ձեզ յայտնական՝
Մինչ ընթերցման լինիք ժաման։
Բայց ասա դարձեալ երկրորդական
Գործ առաջի տաժանական,
Զոր ինչ գրութիւնն է նախնական
Փոխել 'ի յոտըս չափական.
Ոչ ըստ նախնոյն յընդարձակ բան
Այլ համառօտ և ճշտաբան,
Աջապահից միայն անուան
Հետևաբար գոլ պատմաբան։
Ապա ասէն հանգիտանամ
Ձեզ առաջի առնել ջանամ,
Թէ հիմ սոքա ազգ բաղդական
Իշխանութեամբս այս վարեցան.
Որպէս երբեմն ազգ ղևտական
Տապանակին վիճակ անկան,
Տապանակիս աշխարհական.
Հանգունաբար սոքա պաշտպան՝
Աջոյ աջոյն այն սըբազան
Լուսաւորչին մեր Պարթևեան.
Ընդ որում է աջն յարգական
Սեղբեստրոսին հռովմէական,
Նիկողայոս ըսքանչական,
Զարմանալին բանիւ Պարսամ.
Զորից սըբոցն երջանկական
Աջապահ ազգ մեր կարգեցան։
Նախ և առաջ հաւն իմ Յոհան՝
Եղբայր Հեթմոյ արիական։
Աշրաֆ սուլտանն եգիպտական
Էառ ըղԿիլյայն Հռովմէական,
Զհայրապետըն հայկական
Պըսականուն որ էր յայնժամ,
Վարեաց գերի չարն այն գազան
Ըստ չորրորդին կոլով դաժան.
ԶԱջն ընդ կահիցըն սըբոյ տան՝
Վարեաց գերի միանգամայն.
Ապա Հեթում Երկրորդ արքայն
Յետ գերութեանն եգիպտական՝
Բերեալ 'ի Սիս ըղգանձըն զայն,
Ըզլուսատուն մեր հայկական,
Արար աթոռ ընդհանրական,
Հայրապետաց մեր նստարան.
Մինչև ցայսօր և առ յապայն
Աթոռ ազգիս Արշակունեան։
Իսկ զաջըն սուրբ հրաշական՝
Յանձնեաց յեղբայր իւր սիրական
Տեառն Յովհաննու արքիական,
Յորմէ և է արդ մերըս բան։
Սա նախ 'ի կարգ աշխարհական
Մըտեալ՝ ծնանի որդիս ինքեան,
Ապա առնու զայն աստիճան
Որ համայնից է ըղձական։
Եթէ կամիս դու զամենայն
Ըզարմանէ իմանալ բան,
ԸզՊատմութիւնըն նախնական

Առ Թագաւորօք մերովք և 'ի Հաստատել կաթողիկոսական գահուն 'ի Սիս՝ կայր յատուկ եպիսկոպոս կամ արքեպիսկոպոս քաղաքին, որպէս և յառաջ քան զայն, երբեմն իբրև Դրան երից արքունեաց և երբեմն ոչ. և են ծանօթքն ինձ եպիսկոպոսունք Սսոյ,

1193–8. Յովհաննէս (*յետոյ կաթողիկոս*).
1261. Թորոս *արքեպիսկոպոս, քարտուղար արքունի*.
1267. Յակոբ.
1301. Յովհաննէս.
1307–14. Կոստանդին.
1320. Կոստանդին Լամբրունեցի (*յետոյ կաթողիկոս*).
1342. Բարսեղ.
1372. Յովհաննէս *արքեպիսկոպոս*.

*Գլխոյ քահանայութեան Հայոց կալով 'ի Սիս՝ հարկ էր աստանօր և ժողովոց նոցին գումարել. ուր և զատ 'ի սակաւախումբ գումարմանց՝ եղեն և ազգային մեծ ժողովք, յորս յաճախ և Թագաւորքն և իշխանք մեծամեծք նստէին ընդ հարցն և վանահարց. որպէս յամի* 1290, *վասն Կոստանդեայ կաթողիկոսի փոխելոյ յաթոռոյն. 'ի* 1299, *վասն ընտրութեան Անաւարզեցւոյն. և վասն կրօնական խնդրոց՝ յամս* 1307. 1332. 1342-3. 1363:

*Ոչ Հայոց միայն՝ այլ և օտարազնեայց՝ որոց ազգայինքն գտանէին բազմութեամբ յերկրիս Կիլիկիոյ, կային և բարձր գահք եկեղեցականք և եկեղեցիք 'ի մայրաքաղաքին 'ի Սիս: Տեսաք 'ի վեր անդր զկայութիւն Վիլեպրանդոսի, որ համարի պատրիարքական խոլ աթոռ ունել Յունաց աստ, փոխանակ ասելոյ արքեպիսկոպոսական. որպէս էր և Լատինաց հաստատեալ, ոչ միայն 'ի Սիս, այլ և յայլ քաղաքս, յորոց երբեմն մերժեաց Լեւոն՝ 'ի գժտելն ընդ նոսա վասն բերդին Կաստիմոյ և խնդրոյն Անտիոքայ. այլ յետոյ մոյն դարձեալ: Ի սկզբանէ ԺԳ դարու շնորհեալ էր Լեւոնի և վաճառական ընկերհաշտից Գենուացւոց և Վենետկաց շինել առանձինն եկեղեցիս 'ի Սիս, որպէս և յայլ քաղաքս ոմանս: Էր և Ասորւոց աթոռ Հայրապետական, զոր հաստատեաց բարեկամն Հեթմոյ Ա. Իգնատիոս, շինեալ անդ կաթողիկոսարան, յամի* 1244. *յոր յաւել և մեծ բժիշկն Եգեացի Իսա՝ զեկեղեցին յանուն Պարսամայ: Էր Ասորւոց և այլ եկեղեցի յանուն Ս. Աստուածածնի. և երկոքին եւս անապատ մնացին յաւերման Սսոյ յամի* 1266. *այլ և վանք մի նոցա այլազգաբար գրեալ 'ի լատին թարգմանութեան Ապուլֆարաճի՝* Guiechat, Gujechat. *զի արաբագէտ միանձն մի էր անդ և աղերսելով զերծոյց զտեղին. բայց*

Երթ ընթերցիր ջանիւ միայն:
Եղէ՛-ղէ՛ յար և նըման
Յաջորդէ յետ հօրըն մահուան,
Աստիճանաւ քահանայական
Սպասաւորէ այն սըրբութեան:
Ըզարմանէ է 'ի մեզ բան՝
Թէ 'ի Մանթէշ եառ վախճան,
Յեկեղեցին այն հրաշական
Ի սուրբ մարմնոյն իւր գամբարան:
Որդ Որդին Ներկրորդ Յոհան
Սպասաւորէ հօրըն փոխան.
Սա զաստիճան արհիական
Առ առնուլ նախնոյն նըման.
Եւ մինչ եառ զկենաց վախճան,
Եղէ՛-ղէ՛ Ներկրորդ փոխան՝
Շնորհիւ Լին գտաւ արժան
Հօրըն պատւոյ ժառանգական.
Սա զաստիճան քահանայական
Եւ զամբիծ վարըս մաքրական
Նաև զպաշտօն նոյն յարգական
Էառ անձին միանգամայն:
Յորում եհաս վերջին հրաման
Մինչ կայր յերկիր պանդխտական,
Ի յԱտանա՝ առեալ վախճան
Փոխեալ յաշխարհ գերադրական.
Իսկ սուրբ մարմնոյն հանգստարան
Ի Սուրբ Տէլէ վայր բերկրական:
Ապա որդի հօրըն փոխան
Մինաս անունն այն քաջաբան.
Աստիճանի սա ոչ ժաման
Երկնապսակ աշխարհական.
Բայց եւ 'ի գործ ծառայական
Ջանձրն վարուք արժանական.
Բազում կրից տաժանական
Եւ դիպուածոց վշտակրական
Ըզսա սեան գոլ կրական,
Վասըն գանձուն այն պատուական.
Ընդ արևելս երեք ամ
Սորա եղեալ տարադրական,
Հայրապետիւ մեր Հայկական
Նստողիւ յաթոռ գիտապետական.
Ազարիայն այն սրբազան
Հանգիստանայր յաթոռ յայնժամ.

Վասըն պարտուցըն յոգնազան
Սուրբ Աթոռոյն անօրինական,
Դիմեաց յաշխարհ տարագըրական
Աջապահիւ մեր քաջաբան.
Ի Բերիա առեալ վախճան
Ցուրըն աթոռ չեղեալ ժաման.
Տեառն Յոհաննու նստեալ փոխան
Այն որ բանիւ է վիպաբան:
  Դարձեալ եհաս ազդ և կական
Վասն չարեացն մարդկան փոխան.
Ի յԱնթէպու դիմեաց յայնժամ
Սասուրծի ամըն չար գազան
ԸզՍաւրիոյ ասպեան բազան
Մեծամեծօքըն միաբան.
Անտի 'ի Սիս խրախուսական
Անթիւ զօրօք անխուսական,
Յորմէ եղեն փախըստական
Հարքն 'ի չարէն հալածական:
Արք սրիկայք գազանական
Ի քաղաքիս մերում յարեան,
Որոց Սոխտայք մակադրական
Անուն կոչեալ 'ի մէջ մարդկան.
Դիլուխ զօրուն և զօրական
Մահտսի օղլուն, որ զէտ գազան.
Բայց զՍասուրծին իբրև լուան՝
Եղեն խոյոյն հալածական:
Իսկ արք անդ: այս ամենեքեան
Զինչս իւրեանց թողին 'ի տան՝
Ըզձեռանէ որդւոց միայն
Կալեալ՝ եղեն փախստական.
Թէպէտ խնամքըն վերնական
Եւ զթութիւնն արարչական՝
Փրկեալ պահեաց զամենեսեան
Յորոգայթէ անտի մահուան.
Բայց 'ի յընչից զուրկ և ունայն
Եւ մազապուրծ զերծան միայն:
  Իսկ Աջապահն, այն քաջաբան
Յորմէ լինիմք մեք վիպաբան,
Թողեալ զոր ինչ էր մարմնական
Ինչք բասացուածք իւր զանազան,
Միայն կալաւ փոյթ և ըղձան
Ըզլուսատուն մեր Հայկական:
. . . . . . . . . . . .

միւս ևս մենաստան Նոցա Պաքսեմատի կամ Պարքսեմադի կոչեցեալ (Paxemati, Parxemati) այրեցաւ. դարձեալ շինեալ՝ յամի 1275 էին 'ի Նմա քսանևհինգ միանձունք, յորժամ Եգիպտացիք խանգարեցին զայն ընդ միւսոյ ևս վանաց: Էր և պատրիարքի Նոյին առանձին փոքր մենաստան յարուարձանս քաղաքին: — Անագան ուրեմն մտեալ է 'ի Սիս աղօթատեղի մզկթաց. քանզի 'ի ըսկիզբն ԺԴ դարու ասի խնդրեալ Պիլարղու զօրավարին Թաթարաց շինել անդ մզկիթ մի, և ոչ առեալ յանձն Հեթմոյ Բ. և յայս սակս ասեն ոխանալ Թաթարին և դաւաճանութեամբ սպանանել զնա և զեղբօրորդի նորին զմանուկ թագաւորն Լևոն Գ: Զարդիս գոյ մզկիթ մի 'ի Սիս:

87. Եթէ օտարազգիք այսպիսս կանգնէին տաճարս և աթոռս քահանայականս 'ի Սիս, չիք երկբայել թէ բնիկքն ըստ բարեպաշտութեան, բազմութեան և ճոխութեան իւրեանց՝ յոլովս յարդարեցին անդ եկեղեցիս և սրբարանս, թէպէտ և բազմաց ոչ անուանքն յայտնեցան մեզ և ոչ հետք, և ոչ աւանդութիւն 'ի նախնեաց. բայց որչափ ինչ 'ի յիշատակարանաց ձեռագիր մատենից կարողացաք գտանել, նշանակեսցին: Յառաջ քան զկեանեան շինութիւնս՝ սակաւս կամ աննշանս լինել անդ զաղօթատեղիսն՝ ծանուցանէ գանգատ աղօթաւուն Լամբրունեցւոյն. « ԶԱնարզաբա և զՍիս... զի՞նչ ասեմք, որ մինչև » ցայսօր ընդ Հայոց տէրութեամբ են բազում աշխարհօք, և առանց հովուութեան և հօտւոյն Քրիստոսի, » և առանց եկեղեցւոյ և Նորին պայծառութեան. քանզի եպիսկոպոսքն 'ի վանորայս են », և այլն: Զայսոսիկ գրէր երանելին տասն ամաւ յառաջ քան զտիրանալն Լևոնի, այն է յամի 1177, յորում զՊատարագամեկնիչն յօրինէր: Ի Լևոնէ յիշի շինեալ, Ա. եկեղեցի մի, ըստ ոմանց յանուն Էջմիածնի, թերևս փոխանակ ասելոյ Կաթողիկէ, և Ս. Աստուածածնի, յորում և հանգուցաւ մարմին Նորա: — Բ. ըստ կարգի երիցութեան՝ յիշատակի Սրբուհի Մարինէ, յորում գրեալ կայ աւետարան մի յամի 1222: — Գ. Ս. Սոփի, որ ըստ պատուոյ Նախադաս, իբրև արքունական և մայրաքաղաքի եկեղեցի, օրինակ առեալ 'ի Յուստինիանու հրաշակերտ տաճարէն Կ. Պօլսի, սովորութիւն կամ Նախանձ կալան պետք մերձաւորք՝ 'ի Նոյն անուն աստուածային Իմաստութեան Նուիրել զերևելի տաճար արքունեաց իւրեանց. այսպէս մեծաւ խնամով և ջերմեռանդն սիրով շինեաց Հեթում՝ արժանաւոր յաջորդ Լևոնի Մեծի, 'ի սկզբան պայազատութեան իւրոյ, յերի ապարանիցն, սազաշէն ձևով, որպէս աւանդէ եղբօրորդին իւր անուանակից՝ 'ի ժամանակագրութեանն[1]. և ըստ մերոյ Ինճիճեան Հօր՝ այժմ « 'ի Տաճկաց կոչեցեալ Ջանիքը գիլիսէ, վասն զանգակատանն. ձև եկեղեցւոյս է երկայն և կամարաշէն կանգնեալ 'ի վերայ չորից սեանց. տանիք սորա է խանգարեալ, այլ որմունք, խորանք և այլ ամենայն շինուածք են 'ի մեծամեծ յահագին հատորոց սրբատաշ » վիմաց, մածուցեալք կապարաւ, որպէս է տեսանել » Նաև 'ի Նախնի շինուածս ինչ Երուսաղեմի: Աւագ սեղան Նորա է զմբեթայարկ, աստի և անտի այլ ևս երկու սեղանք Նոյին շինուածով, իսկ 'ի վերայ Նոցա » վերնատունք, յորս յերկոսին կան կրկին այլ սեղանք, » շուրջանակի արտաքուստ 'ի վերին կողմն՝ մեծամեծ երկաթագիր տառիւք փորագրեալ կան անուանք թագաւորացն Հեթմոյ, Լևոնի, և այլն: Ի յեկեղեցւոյն մերթ » է ելանել 'ի Զանգակատունն՝ որ է բարձր, քառակուսի, գլուխ Նորա տափարակ, ունելով կրկնակի պատուհանս յիւրաքանչիւր կողմն, և կայ անարատ և ամբողջ՝ այլ առանց զանգակաց: Կից ընդ եկեղեցւոյս է » և մատուռն ինչ »: Մի 'ի սխրալի տաճարաց Հայոց է սուրբս Սոփի, ուր յետին մեծապայծառ և բերկրալից տօնք և հանդէսք Նոցա կատարեցան լրութեամբ սրտից զուարճացելոց յերկոսին ազգային գահագլուխս իւրեանց, 'ի թագաւոր և 'ի կաթողիկոս. բազում անգամ հանդիսակացս ունելով և զօտարս. 'ի միում Նուագի յիշի մեծի թագաւորահօրն Կոստանդեայ արքայորդւովն Հեթմի՝ բերեալ անդր զպատրիարքն Անտիոքայ, և 'ի միասին պատարագեալ Նորա և հաղորդել ընդ Կոստանդեայ կաթողիկոսի[2]: Յամի 1266 ընդ քաղաքին և զմեծափառ եկեղեցի Ս. Սոփիայ հրձիգ արարին Եգիպտացիք, որպէս առանձինն յիշեն ժամանակակիցք: Կիրակոս կաթողիկոս Նորոգեաց և զայս տաճար յամի 1824: Տանիք եկեղեցւոյն արդ տափարակ է, 'ի վերայ արուեստագործ սրաւոր սեանց. կոչեք թէ մին յախճապակեօք յարդարեալ, խաչկալն զահեայ դրուագօք խտալացի ոճով, այլ ոչ վայելուչ, որպէս և վերին մասունքն. առաջի խորանին կանգնին զոյգ մի գեղեցիկ ճրագարանաց 'ի վերայ պղընձեղէն առիւծուց: Նշանաւոր է կճեայ աթոռն արքունական՝ քանդակաւ առիւծու և արծուեաց: Ի հիւսիսային արևմտեան կողման են տապանք կաթողիկոսաց: — Դ. Ս. Սարգիս, մի 'ի հնագոյն եկեղեցեաց Սսոյ, փոքրիկ չափով և մթին, որոյ միայն յարկ դասուն մնայ 'ի հին շինուածոյն, այլն ամենայն կարկատեալ 'ի յետին ժամանակս փայտածածուկ, հաստատեալ 'ի վերայ չորեցուն հին սեանցն: — Ե. Ս. Հռիփսիմէ. յիշի սա 'ի յիշատակարանի արծաթեայ պահարանի Նշխարաց սրբոց՝ գրեալ իբրև յամի 1269, 'ի

« Մայր քաղաքայ հանուրց Սըսոյ,
Ընդ հովանեաւ յոյժ Սրբուհւոյ
Հռիփսիմէի ըսքանչելւոյ »:

— Զ. Ս. Յակոբ. յորում յամի 1274 Գրիգոր երէց տայ գրել Մանրուսմունս ձեռամբ Կարապետի դպրի որդւոյ Թորոսի ձիաւորի: — Է. Սուրբ Հոգի. « որ յայսմ (1280) » ամի վերստին Նորոգեցաւ պատուական քարամբք քերեալ 'ի ճարտարաց, ձեռամբ Ստեփանոս Վահկացւոյ, և ծախիւք հրամանաւ Սոսթենէս րաբունւոյ, որ » վարժ և կիրթ յամենայն գիրս աստուածային հնոցն և » Նորոց, և արտաքին փիլիսոփայիցն՝ գեր 'ի վերոյ. որ և » 'ի ժամանակիս մեր և 'ի թագաւորութեան Լևոնի, և

1 « ՌՉԷ. Թագաւորեաց Հայոց ամենաբարի Թագաւորն Հայոց Հեթում... Սա շինեաց սազաշէն տաճար Սուրբն Սոփիա 'ի Սիս »:

2 « Ի սոյ պապանցն ժման, Աւագ պարոն (Կոստանդին Պայլ) կամ « Հեթում՝ բերին զԱնտիոքայ պատրիարգն զՓրանգն՝ 'ի Սիս. որ « ինքն և տէր Կոստանդին կաթողիկոսն պատարագեցին 'ի Սուրբն « Սոֆի »: — Գր. ԱՆԱԻԱՐՁ. Թուղթ առ Հեթում:

» 'ի հայրապետութեան Յակոբայ՝ ոչ ոք է կատարեալ » իբրև զսա յամենայն իմաստս, բայց 'ի մեծ բաբու» նեայն, որոյ անուն Ցօղ է քաղցր, որ և Վահրամ կոչի »: Սոսթենէսդ իմաստասէր տուեալ է գրել նոր կտակարան մի ձեռամբ Վահկացւոյդ: — Ը· Ս· Նշանն, ընդ որոյ հովանեաւ բազում գրեանք գրեալ են յԺԲ դարու և 'ի ԺԴ, յորմէ գուշակի և մի 'ի գլխաւոր եկեղեցեաց լինել. յիշին անդ Պետրոս նախասարկաւագ յամի 1319, Կոստանդին քահանայ որդի Պետրոսի և Թագուհւոյ և Հայր Տիկնաց Տիկնայ դստեր՝ վախճանելոյ յամի 1323[1]: — Թ· Ս· Միհրնն, ընդ որոյ հովանեաւ Տիրատուր քահանայ գրեալ է Մանրուսումն, յամի 1280: — Ժ· Ս· Աստուածածին, որոյ դասն՟միայն հին է, այլն ամենայն նորոգեալ 'ի մօտ ժամանակս. 'ի վերայ սեւակ սեան միոյ նշմարին խաչքանդակք և Սուրբ Կոստանդին գրեալ: — ԺԱ· Ս· Նիկողայոս, յիշի յամի 1374, և ընդ նմին Ս· Նշանն Ջորոյ վանից և վանկայ սուրբ Նշանն: — ԺԲ· Ս· Ստեփանոս, որ « Գունդուստապլի եկեղեցի անուանի », ըստ գրչի Մաշտոցի միոյ յամի 1345, 'ի խնդրոյ Յովհաննու արքեպիսկոպոսի աթոռակալի Ս· Առաքելոյն Բարդողիմէոսի, 'Թերևս 'ի մեծ Գունդստապլէն Սմբատայ չինեալ. երկու դարուք ևս զկնի՝ յամի 1560 Վահրամ ոմն որդի Տէր Լևոնի գրէր աստ գանձարան գիրս: — ԺԳ· Ս· Մերկերիոս, զարդիս աւերակ, 'ի մէջի պարապոց քաղաքին: — ԺԴ· Ս· Պետրոս և Պօղոս, աւերակ. զայս ոչ գտի 'ի յիշատակս գրոց. — ԺԵ· Ս· Աքանագինէ, որպէս կարծեմ զանուանեալն Sancta Etennacine 'ի լատինացի ստորագրութեան ժողովոյն Սսոյ, յամի 1342, որոյ երէց կոչի Յովհաննէս. Զամչեան Հայր մեր կարծեալ է Հիբուսնայէն ընթեռնլի: — Արտաքոյ եկեղեցեացս՝ որ 'ի բուն քաղաքին Սսոյ, յիշի Տէր Պօղոսի վանք 'ի հարաւակողմն քաղաքին, յորում Վանկոյ Ս· Նշանն էր և Աջ Լուսաւորչին, և (ԺԶ) եկեղեցի յանուն Ս· Աննայի մօրն Աստուածածնին, զոր զարդարեաց Կարապետ կաթողիկոս յամի 1448, անդ հաստատեալ զաթոռ իւր[2]: — Թէ էին և այլ վանորայք 'ի մերձաւոր սահմանս Սսոյ՝ ոչ գիտեմ, և կամ այլ բարեպաշտութեան և բարեգործութեան տեղիք. հաւանական յոյժ են յետինքս, մանաւանդ թէ հաւաստեալ կճեայ վիմով միով, որ յամի 1833 գտաւ 'ի հող այլազգւոյ միոյ, յերի արևելեան պարսպի կաթողիկոսարանին, թէ և առ նախանձու՝ խորտակեցաւ վէմն. այլ արձանագիրն ընդօրինակեալ մնացէ յաւերժական յիշատակ՝ յիշատակելւոյն 'ի Թագուհիս Սիսուանայ, լեռնածինն Զապելի. և էր այսպէս.

## « Յարմարումն Շինուածոյ Հիւանդանոցիս Քրիստոսասէր Թագուհւոյ Զապելի Ի Թվին Հայոց ՈՂ·

Պատուհական բրումն քարի միոյ յետ վեցհարիւր ամաց զանխլութեան՝ 'ի վեր եհան զայսպիսի գեղեցիկ ձեռնարկ. քանի՛ արդեօք նմանագոյն պանծալի ճշմարտութիւնք թագուցեալ մնան ընդ հողով և ընդ թմբրեալ հոգով յետամնացիցն՝ այնպիսեաց աշխարհաշէն թագաւորաց և թագուհեաց. զի այսքան դարս որդի 'ի հօրէ և աշակերտ 'ի վարդապետէ սերեալք և բուեալք յերկրի անդ, և ոչ մի արձանագիր յայնքան տաճարաց և որպիսի և է շինուածոց նախնեաց՝ ոչ ծանուցին հրատարակութեամբ. մինչև կարօտանալ մեզ անյարմար և սխալագիր ընդօրինակութեանց Թերուս փռանկ երիտասարդի միոյ, և մուծանել յանկիւնս ուրեք տեղագրութեանս: Բեկորքըն փշրեալք արձանացուցանեն և զ՚առ 'ի յիշատակագրաց վկայեալ գթասիրութիւն Զապելի՝ 'ի հիւանդս և 'ի տնանկս. որոց յոյժ հետեւող վկայի և դուստր իւր Ֆիմի՝ տիկինն Սիդոնի. որ յետ վաճառման այնր երկրի՝ դարձ արարեալ առ հայր իւր և առ եղբարս, մխիթարէր զեւր տրտմութիւնն՝ զայլս մխիթարելով. և ըստ ժամանակակից գրողի՝ էր « Կարեկից ամենեցուն, մանաւանդ որ 'ի հիւանդութեան ախտից նեղեալ են »:

88· Յետ եկեղեցեաց և գթութեան տեղեաց՝ արժան էր որոնել յարքունականն 'ի Սիս և զուամանց օթարանս.

[1] Ի նմին ամի (1323) Յովսէփ քահանայ եղբայր Վասիլի, գրէ անդ Շարակնոց, զոր կազմէ Պօղոս քահանայ եղբայր Պետրոսի քահանայի:

[2] Ժամանակակից յիշատակագրողն բազում դրուատեօք խօսելով զկաթողիկոսէն, վկայէ « Վերստին կրկին նորոգեալ զաթոռ » մայրաքաղաքիս Կիւլիկիոյ, և զհետ հետոց նախնեացն ընթացեալ... » հաստատեալ 'ի յաստուածաբնակ սուրբ ուխտս Տէր Պօղոսի, որ » կայ 'ի հարաւակողմ քաղաքիս Սսոյ, ընդ հովանեաւ Վանկոյ սուրբ » Նշանիս, և սուրբ Աջոյն Գրիգորի մեր Լուսաւորչին, և մօրն Տիրամօր Աստուածածնին՝ Աննայի, յորոյ անուն կառուցեալ կայ եկեղեցի:.. Արդ այս երջանիկ հայրապետս Տէր Կարապետ կաթողիկոս՝ եկեալ 'ի Թոխաթոյ, և վերստին հաստատեաց զսուրբ աթոռ » Լուսաւորչիս 'ի մայրաքաղաքիս Կիւլիկիոյ. զոր հինգ ամ խափանեալ մնաց, վասն անյայտ լինելոյ սուրբ աջին մերոյ Լուսաւորչին. » և յետոյ գտեալ նորոգեաց զսուրբ աթոռս », և այլն: Յիշատակի ընդ կաթողիկոսին և եղբայր նորա Պր. Առաքէլ. որդի սորա Տէր Գրիգոր եպիսկոպոս Հարսընքէֆոյ, և այլք, այսպէս.



այլ որոշակի վարժարանաց կամ դպրատանց ինչ յիշատակ ոչ գտանեմ 'ի գիրս. բայց աներկբայ է 'ի մերձաւոր վանքերն, որպէս 'ի Մեծքարն Նախայիշեալ (յէջ 196), 'ի մերձագոյնն 'ի Դրազարկ, և յայլս ոմանս, ոչ սակաւ բարգաւաճանք գեղեցիկ դպրութեանց և երաժշտութեան. զորոց հաւաստիս տեսաք կանխաւ 'ի Սկեւռայն և յայլ վանորայս ինչ, տեսցուք և յառաջիկայդ: Ի յետին դարս, 'ի սկիզբն ԺԸ ի, յիշէ Եփրեմ կաթողիկոս 'ի Սիս վարժարան մի՝ Համալսարան Ս. Ներսեսի Լամբրոնացւոյ անուանելով. և այլուր ասէ, « Ս. Ներսիսի Լամբրոնացւոյն՝ » հաւոյն մերոյս Դպրատան ». ոչ գիտեմ երբ հաստատեալ, և անդ ասէ վարժեալ զՂուկաս կաթողիկոս Աջապահ: — Վկայեալ է 'ի պատմչաց և 'ի յիշատակարանաց մնացելոց մատենից՝ գրասիրութիւն Հեթմեանց, Լեւոնի Բ և որդւոցն. առ յետնովն 'ի սոցանէ (առ Օշնիւ)՝ եկեալ յարքունիս Նորա եպիսկոպոս ոմն (Սերապիոն) յամի 1320, 'ի կամել թագաւորին պատուել զնա ընծայիւ, ընտրեաց նա առնուլ գիրս ինչ, և « Մտայ, ասէ յարկեղս » սանն, ուր հաւաքեալ կային սուրբ կտակարանքն ». և առնու աւետարան մի բազմերանգ նկարակերտ, և այլն: Չիք երկբայել զի և այլոց ազնուաց էին արկեղք մատենից. և անմարթ թուի այդպիսեաց ուսումնասիրաց՝ չըկարգել և դպրոցս մանկտւոյ: — Բայց եթէ նիւթական տեղիք և օթեվանք իմաստից ոչ յիշին 'ի Սիս, կամ թէ չհասին յիմ գիտութիւն, յոլովութիւն գրչագիր մատենից գրելոց 'ի սահմանսն և 'ի բուն 'ի քաղաքին Սսոյ [1], (որպէս նշանակեցին և յիշատակք եկեղեցեաց), և գովութիւնք 'ի նոսին գգիտնոց Սսոյ, ընծային մեզ խընդութեան և գոհութեան փաստս. և բազում ուրեք՝ մանաւանդ յերգոց գիրս՝ ասի վասն ընագրացն՝ լինել « 'ի » լաւ և յընտիր օրինակէ առաջին իմաստնոց և վարժապետացն Սսոյ ». յորս Շարական գրոց ընտրող և ստուգող յայտ է թերևս յոգունց՝ 'ի յիշատակարանաց այն գրոց, Գրիգոր ոմն վարդապետ Խուլ կոչեցեալ, յորմէ և օրինակ Շարականին խլկցի. և անուանի « առաջին վարժապետ և քաջ քարտուղար ». ժամանակ կենացն ոչ է ինձ յայտ, այլ յայտ է թէ առ թագաւորօք մերովք եկաց [2]: Յաւուրս հանդարտութեան և շինութեան երկրին ԺԳ դարու, և մանաւանդ յաւուրս շինաւէր և ուսումնաւէր չորից թագաւորաց որ զդարն զայն լցին իշխանութեամբ իւրեանց և ամենայն բարեձևութեամբ, (երկուց Լեւոնից և երկուց Հեթմոց), ոչ միայն 'ի սահմանս իշխանութեան իւրեանց սփռէին շնորհք Սսոյ, այլ և անտուստ բազում պիտանի մատեանք արքունական առատաձեռնութեամբ գծագրեալք՝ առաքէին 'ի վանորայս արևելից, կամ յանդրագոյնսն՝ յարևմուտս, ուր ուրեք զաղթեալ էր Հայոց և վանս և եկեղեցիս հաստատեալ, 'ի քաղաքս Իտալիոյ ասեմ. դարձեալ և անդուստ յարևելից՝ ոչ վարկպարազի սպասաւորք ոմանք բանի, այլ և համբաւեալքն առ մեզ գիտութեամբ և մատենագրութեամբ՝ գային 'ի Կիլիկիայս, 'ի գիւտ իմաստից և գրենոյ, մերթ յայտնի, մերթ ծածկեալ զպատճառ իւրեանց, զի համարձակ աշակերտեսցին. որպէս գերահռչակն այն Միխիթար Գոշ, Մեծն անուանեալ վարդապետ Պատմիչ և բազմագիր, որ ոչ սակաւ ժամանակս եկաց յարքունիս, և վասն Հեթմոյ և Զապելի գրեաց քերականական ժղլանս (զբօսանս). ուսումնակից Նորա Կիրակոս Վ., նոյնպէս Արևելցի և Պատմիչ, որ աստանօր յանգ եհան զՑայսմաւուրս իւր, եռեմեաւ յառաջ քան զմահն, որպէս և գրէն. « Եղև իրակութիւնս այս 'ի » Թվիս ՉԺԸ, յաշխարհիս Կիլիկեցւոց 'ի Սիս մայրաքաղաքի, 'ի թագաւորութեանն Հեթմոյ, և յառաջին » ամի իշխանութեան որդւոյ Նորին Լեւոնի, 'ի ԿԶ ամի » կենաց պանդխտութեան մերոյ, յորում աւարտն եղև » 'ի փառս Աստուծոյ »: — Նոցին հետևող և արդեօք գերազանցեալ յետին ճարտար մատենագիր մեր՝ Ցովհաննէս Երզնկացի, դեգերէր երբեմն յարքունիս և 'ի վանորայս վիճակիս՝ 'ի բանասիրական խնդիրս, և հրաւիրեալ լինէր 'ի մեծահանդէս տօնս եկեղեցականս և արքունականս արտասանել ճառս և ներբողեանս. օրինակ իմն, « Ի խորհուրդ Ծննդեան և Մկրտութեան Տեառն » ասացեալ 'ի թագաւորական քաղաքն 'ի Սիս ». և այլ երբեմն (յամի 1283) « Յաւուրն՝ յորում օրհնեցան ձիաւորք՝ արքայորդիք մեր Հեթում և Թորոս և այլ մանկունք իշխանաց և որք յարքունական սպասաւորացն », ընթերցան կարգելով զասպետականն, « Ամենայն անձն » որ ընդ իշխանութեամբ է », և այլն. և այլք այսպիսիք: — Ի Սսոյ եբեր և Յովհաննէս Օրբելեան Սիւնեաց գիտապետ՝ զընտիր օրինակ մի Յայսմաւուրաց, և այլք զայլոց Կիլիկեցի հեղինակաց գրեան. որպէս Դաւիթ ոմն վարդապետ՝ զԼամբրոնեցւոյն թարգմանութիւն Մեկնութեան Յայտնութեան եբեր 'ի Հաղբատ: Նախագրելոցն ժամանակակից (յաւուրս Հեթմոյ Ա) այլ ոմն բանաւէր Յովհաննէս անուն, գանգատելով ոչ գտանել ըստ ըղձանացն ճարակ ուսմանց 'ի Մեծ Հայս, ասէ. « կանխեալ վերստին գոլով 'ի տեղի իմաստասիրաց և ուսումնասիրաց՝ յերկիր Կիլիկիոյ, որոյ Քրիստոս պահապան կանգնի և ինքն պատսպարէ աջով իւրով », և այլն: Ըստ այսոցիկ և այլս յոլովս է գտանել վկայութիւնս: — Բնակութիւն այլալեզու ազգաց 'ի մայրաքաղաքին, որպէս և յայլ քաղաքս, և երեսփոխանք այլ և այլ պետութեանց արևմտեայց, առէպ թղթակցութիւնք և հրովարտակք վասն նոյին, յայտ է թէ պահանջէին զուսումն և զգիտութիւն լեզուաց. յոր սակս ոչ միայն թարգմանք և գրագիրք գոյին առանձինն լատինականի, իտալ և արաբացի և թուրք կամ թաթար լեզուաց [3], — որոց ոմանց գտանին և անուանք 'ի ստորագրութեան հրովարտակացն, զոր օրինակ, վասն լատին

[1] Փերթող պատմիչ գործոց Նիկոլի եպիսկոպոսի Լեհահայոց ասէ.

« Աւետարանք ոսկով գրած Արծաթապատ կողքով պատած,
Անգիւտ գրեանք որ Լով կային՝ Սըսայ խազնիցն ելեալ էին »:

Առաքէլ Պատմիչ աւելի ջան զհազար փերթ ասէ զայսպիսի ձեռագիր մատեանս Լովայ:

[2] Տեսցի որ ինչ ասացաւ զմանէ յէջ 105-6:

[3] Այլոց ևս հեռաւոր լեզուաց կարծելի է, որպէս եթովպիականին. զի Հեթում Պատմիչ 'ի յորդոր ազատութեան Ս. երկրին, թելադրէ Պապին՝ գրել և առ թագաւորն Եթովպիոյ, և առաքել ըղթուղթն առ թագաւորն Հայոց՝ զի տացէ թարգմանել:

լեզուի՝ Bovon ոմն՝ յամի 1214. վասն փռանկ լեզուի՝ Jouffroy յամի 1271, Paumier յամի 1307, Nicole de Bars յամի 1321, և այլն. և երբեմն Հայք գրիչք յօտար լեզուս. – այլ և դպրոցս լատին լեզուի յանձն առեալ ասի Լևոնի Մեծի 'ի սկզբան թագաւորութեանն՝ կարգել, և մարզել զմանկունս յերկոտասանամենից և 'ի վայր. որպիսիս հարկ է թէ և յաջորդքն արարին, թէ ոչ և ամենեքին: — Թարգմանութիւն Ասիզաց Անտիոքայ 'ի փռանկ լեզուէ՝ 'ի ձեռն Սմբատայ Գունդստապլի, և թուղթ սորին գրեալ 'ի Թաթարաց առ քեռայր իւր փռանկ թագաւոր Կիպրոսի, քաջ յայտ առնեն զկիրառութիւն լեզուին յարքունիս Սսոյ. թող զյաճախ խնամութիւնս արքայազանց ընդ օտար թագաւորազունս և ազնուազգիս, և զնոցին իսկ օրինաց կիրառութիւն յատեանս և յարքունիս Սսոյ, որպէս և անուանք պաշտամանց՝ առաւել օտար քան բնիկ հայկականաւն վարեալ լեզուաւ: – Շատ լիցին այսքան յիշատակք 'ի դրդումն մտաց առ 'ի պատկերակերպել զբարոյական և մտաւորական երևոյթ քաղաքամօրն Սսոյ յԺԳ և ԺԴ դարս. ընդ նմին և զքաղաքական և տնտեսական հանգամանս և զշինուածս, որոց անմարթ էր չլինել չքեղս և վայելուչս, թէ և չերևեցին արդ հետք նոցին, վասն նախասացեալ պատճառաց:

39. Նշանակեսցուք և զդէպս ինչ և զանցս կարևորս 'ի Սիս և ընդ Սիս. որպիսիք, նախ, ընդ մէջ չքեղ շինութեանց Լևոնի և յերկարագոյն ևս յարդարմանց Հեթմոյ, յամս անդ անսասոյդ ժառանգութեան թագին (1219), սպանումն Թագապահին Սիր Ատանայ՝ 'ի Հաշիշեանց Ասազակաց. բռնարարութիւն Բրնձին Ռուբինի՝ թոռին Բ Ռուբինի՝ 'ի թագաւորել, և զրկումն, նոյնպէս և Փիլիպպեայ փեսային Զապելի. ապա ամենազան հանդէսք յ'երկար թագաւորութեանն Հեթմոյ, ոչ միայն 'ի Հայոց սակս այլ և օտարաց. որպէս, յընտրութեան և 'ի հաստատութեան կաթողիկոսաց Ասորւոց, այսինքն Իգնատիոսի Բ, որ յամի 1263 'ի Սիս՝ Մաֆրիան (մետրապոլիտ) Արևելից ձեռնադրեաց զհռչակաւոր մատենագիրն և պատմիչ՝ Գրիգոր Ապուլֆարաճ: Բայց զամենայն հանդէսս և զտօնս՝ լռեցոյց նախայիշեալ բազմաղէտ աւերումն Սսոյ, զոր ածին Եգիպտացիք յամի 1266. զոր ընդ հուպ (1268) սաստկացոյց և աճեցոյց ուժգին սասանումն երկրի. յետ որոց ոչ ևս յառաջին փառսն ժամանեաց քաղաքն, թէ և վերանորոգեալ եղև խնամով: Ի ժամանակի անդ չքեղութեանն առ Հեթմով՝ բազումք յեւրոպացի նուիրակաց, յաշխարհայնոց և յուխտէ եկեղեցւոյն, որպէս և առ Լևոնիւ, ագանէին յարքունիս. յորոց մի և Դոմինիկեան միանձնն Պրոքարտ մականուանեալ, եկեալ զկիսով ԺԳ դարու, եկաց ամսօրեայ աւուրբք 'ի պալատանն. և նշանակէ տեսեալ 'ի դրանն՝ հինգ կամ վեց պաշտօնեայս միայն Թաթարաց, (զի ընդ հարկաւ նոցին մտեալ էր յայնժամ Հեթմոյ). իսկ քրիստոնեայ պաշտօնեայս իբրև հինգ հարիւր, յայտարար մեծութեան և ճոխութեան նորին. Նշանակէ և զբազմութիւն ներքինեաց՝ յորոց շատք 'ի պատուհաս յանցանացն արարեալ էին. և էին 'ի սոցանէ 'ի սպասու դշխոյին՝ քառանիւ չափ: — Մեծ աւերած Եգիպտացւոցն՝ խրամատ իմն թողեալ էր անդորրութեան Սսոյ. ընդ որ յետ ամաց ինունց (1275) դարձեալ դիմեցին, և կրկին հըրկէզ արարին զշինուածսն, այլ ստանալ բերդին՝ յոր ապաւինեալ էին բնակիչքն՝ ոչ կարացին. յայսմ նուագի ևս ասի ապստակացն աւերեալ զապարանս թագաւորին, զպատշգամս զբօսանացն և զդրախտս. զի և ըստ բանից յիշատակագրի միոյ, գուն գործեցին «յափշտակել զամուրն՝ զՍիսոյ բերդն. և ել երէց մի ընդդէմ նոցա 'ի ճակատու, և զմի 'ի սուլտանեացն սատակեաց. և ինքն անդէն նահատակեցաւ. և այլք պերճանդամ գնացին յաշխարհն իւրեանց»: — Ընդէ՞ր լռէ համառօտախօս յիշատակողդ զանուն երիցուն և զօրինակ սպանմանն՝ զնորայն և զօտարին: — «Եւ 'ի նոյն ամի (ըստ Հայոց, այլ ըստ Տէրունւոյն 'ի 1276) դարձեալ դարձան 'ի Սիս. և Տէր ոչ յաջողեաց նոցա, այլ փակեաց զնոսա ընդ ձեռամբ Լևոն թագաւորի, և 'ի սուր մաշեաց զնոսա, և մնացեալքն փախստեայ անկան 'ի խորշս իւրեանց»: Ի հալածական տանելն զնոսա՝ հանդիպեցաւ ծերունւոյ Գունդստապլին Սմբատայ վտանգն, մերձ 'ի սահմանս Սարուանդիքարի, ուր և յիշեցաւ (յէջ 210): — Ցայսմ հետէ ցդար մի ողջոյն՝ ցորչափ տևեաց թագաւորութիւն Հայոց, թէպէտ բազում անգամ Եգիպտացիք և Թուրքմանք ասպատակեցին և կրծեցին զերկիրն, այլ ոչ յիշի աւեր և աւար Սսոյ, որ դարձեալ բարգաւաճէր ըստ կարի, և առ Բ Հեթմով լինէր անդ հաստատութիւն կաթողիկոսարանին, մեծահանդէս ընտրութիւնք և օծութիւնք թագաւորաց և կաթողիկոսաց. յորոց յատկապար յիշի չքեղաշուք օծութիւն Սմբատայ 'ի թագաւորութիւն, յամի 1296, որպէս գրէ ժամանակակից ոմն. «Ժողովեցան թագաւորորդիքն և թագաւորազունքն և իշխանքն, և միանգամայն աշխարհաժողով բազմութիւն ռամկաց և խառնիճաղանճ մարդկան, 'ի հոյակապ մայրաքաղաքն Սիս, 'ի տօնի մեծի Աստուածայայտնութեանն. իսկ սրբագործ կաթողիկոսն Հայոց Տէր Գրիգոր՝ ամենայն եպիսկոպոսօք և համագումար ժողովով և բոլոր ուխտիւ եկեղեցւոյն, և աջով սրբոյ Լուսաւորչին մերոյ Գրիգորի և աստուածային աւետարանաւն, ձեռս 'ի վերայ եդեալ՝ աւանդեաց նմա զաստիճան և զօծումն թագաւորութեան. և համաշխարհական ժողովն պաշտաճաւոր խրախութեամբք բարգաւաճեալք՝ ըստ իւրաքանչիւր աստիճանի. զոր պահեսցէ աջ ամենազօրին Աստուծոյ անվրդով և երկայն կենդանութեամբ, գնալով զօրութենէ 'ի զօրութիւն. և հերքելով առ ոտս զթշնամիսն խաչին Քրիստոսի»: — Այլ, աւա՜ղ է, զի յընտանեաց ծագեցաւ վրդովումն, և հակառակութիւն եռանդուն եղբարցն՝ վասն թագին ժառանգութեան, որպէս յայտ է 'ի պատմութենէ, մինչև թագաւորեցոյց Հեթում զեղբօրորդեակն՝ Լևոն Գ., ընդ որում և սպանաւն ըստ նախագրելոցս՝ 'ի Պիլարղուէ: Սա կամէր բըռնանալ և 'ի վերայ մայրաքաղաքին. այլ Օշին եղբայր և հօրեղբայր դաւաճանելոցն՝ «իսկոյն եկն 'ի բերդն Սսոյ, և ժողովեաց զմնացեալ իշխանսն և զօրս բազումս, և մարտուցեալ ընդ պղծոյն՝ եհան յերկրէն» (1308): Յետ իբր տասն ամաց ասպատակեալ 'ի Կիլիկիա՝ Տամուրտաշ, «նստաւ երեք օր առաջի Սսոյ. այլ անկեալ 'ի Տեառնէ տագնապ 'ի վերայ նորա և զօրացն նորա»,

'ի բաց ընկրկեցաւ։ — Ցետ այլոց ևս ոչ յոյժ կարևոր դիպաց՝ ընդ կէս դար ժամանակի՝ տակաւ մերձենայր օրհաս մայրաքաղաքին, մանաւանդ թէ թագաւորութեան Հայոց. յառաջ քան զվերջին մահու հարուածն, 'ի միջոցի 1366–9 ամաց, (որ մի 'ի մթագունիցն էր 'ի պատմութեանս մերում, և սակաւ ինչ դեռ 'ի նորումս ստուգեցաւ), թագաւորէր յետ Կոստանդնի Բ որդւոյ Մարաջախտին (1344+1365), այլ ոմն Կոստանդին (թոռն Դ Լևոնի ասացեալ՝ որպէս թուի յազգէ մօրն), այլ որդի Պարոն Հեթմոյ (կարծեմ Նղրեցւոյն), «Եկին խմայէ» լացիք (Թուրքմանք?) 'ի վերայ Սոյ ընդ անցմնցուկն, և » սպանին զքաջ սպարապետն Հայոց Լիպարիտն. որոց » գլուխն էր Շահար օղլին։... Դարձեալ եկն երկրորդ » անգամ, և այրեաց զքաղաքն Սիս, և եկաց աւուրս » քսան. որ եղև մոթ մի ցորեան հինգհարիւր դրամ»։ Օտար և եկամուտ ոմն թուի անուամբն՝ սպարապետդ քաջ, զոր գիտեմք Օրբէլեան տոհմին յատուկ. այլ ուստի և որպիսի ոք և իցէ, աներկբայ է գործն և արութիւնն, և ծագէ նչոյլս ինչ պատմութեան, զոր քերդողք նախագոյն ևս փայլեցուցանեն. որպէս Թլկուրանցի կաթողիկոսն (Յովհաննէս). յորոյ քերդուածին (որ 'ի ստորև ընդօրինակեսցի), նկատելի են դէպք մարտին, 60,000 Թուրքաց յարձակումն՝ առաջնորդութեամբ Մանչակայ ուրումն, կամաւ կամ ակամայ անգիտութիւն Հայոց, և անզգոյշ թողուլ զկամուրջն ապաւինի, ա-նուանք ընտանեաց Լիպարիտի, Լայլն [1]։ Թերևս սրտագին ևս քան զԹլկուրանեցւոյն են բանք այլոյ անծանօթ և ռամկաբան քերդողի, որ երգէ այսպէս.

## [1] ՏԱՂ ՔԱՋԻ ԼԻՊԱՐՏԻՆ

ՅԱստուծոյ անունն օրհնեալ՝
Որ անըսկիզբն և անվախճան,
Որ ետուր ուժ Լիպարտին,
Եւ զօրացոյց զիւր սուրբ ծառայն.

Զերթ սուրբ Սարգիս քաջն ի նման,
Ի սուրբ Թորոս, ի սուրբ Վարդան.
Քան ըզՄուշեղն յաղթող եղեալ,
Քան ըզՏրդատ Հայոց արքայն։

Յորժամ հեծնուր զիւր ձին վազան,
Ի ձեռն առնոյր զըռում ճօճան,
Սասանէր ազգըն Օտրանց?,
Դողայր ամէն Օտըրստան։

Պատերազմին շըկայր խափան,
Ամէն տարի տասն և քըսան.
Մինն ըզթումանըն հալածէր,
Արիւն հանէր զէտ գետ Ջիհան։...

Զերթ քացխով տիկ չարեօք լըցան,
Ժողովք առին ու 'ի Սիս էկան,
Մանչակ անուն չարեաց մատան.
Մօտ ի քաղաքն եկան հասան։

Վաթսուն հազար մարդ միաբան
Զրէհն հագան ու 'ի ձին հեծան,
Զեռուին առին զըռում ճօճան,
Թուր և ասպար, ու կանգնեցան.

Վաթսուն հազար Օտրանց ելան,
Զայն ձըգեցին ու կատղեցան.
Հարին ըզփող պատերազմին,
Ըզպուկն ու զնաֆիրն ըզգաւհարկան։

Այն անօրէն չար կենդանիքն
Որ են նոքա օտարական,
Եւ ի յահէն քաջ Լիպարտին
Զինչ զուռ դողան, առաջ չիգան։

Յայնժամ ասէ սուրբ թագաւորն.
Քաջ Լիպարիտ, մեծ զօրական
Հեծելըս քեզ համար եկան,
Մինչ յայս տեղիս ուր կանգնեցան։

Վաթսուն հազար մարդ կոտրեցիր,
Որ զՄանչակին գոված տղան առիր.
Զթախտըն թուլանայ?, բերիր
Զխանուն չատ թախտան?։ —

Քաղցրիկ ետուր պատասխանի.
Թէ, Ես՝ քաջքիս չարին փոխան.
Բայց չէ պատեհ զըուց առնել,
Թէպէտ հասաւ ինձ օր մահուան։ —

Էջ և թամբեաց զիւր ձին վազան,
Հագաւ զըէհ ւ'ի վերայ ճօշան.
Ի գլուխն եդիր յաղթող վահան,?
Ի ձեռն էառ զըռում ճօճան։

Երկըրպագեաց սուրբ աթոռոյն,
Եւ ծունր եդիր ամէն խորան,
Փառաւորեաց զԷրրորդութիւն,
Գովեաց զիշխանացն միաբան։

Հառչեաց, զորդեակըն համբուրեաց,
Հանց՝ որ զհեծելըն ի լաց եհան.
Ասաց, Որդեակ իմ Յովհաննէս,
Վասէլ, եղբայր իմ սիրական.

Փառօք տիկին դու Մանանայ,
Իշխանուհի արենըման,
Հայեաց պատկերս ի մանկութեան՝
Որ տի մտնում ի հող տապան։

Քաջ Լիպարիտ ասաց ցարքայն.
Հայոց թագւոր ազնուական,
Հաստատ ու ամուր պահէ զկամուրջն,
Որ ես մտնում ի մէջն ու գամ։

Յիշեաց զՔրիստոս աՀեղաձայն.
Կտրեց ւանցաւ առիւծ նըման.
Զհեծելըն արար փախըստական,
Ի ի հետն երթայր ընծանըման։

Լաչկ արաւ գիզան գիզան,
Հանց որ արիւն գետեր ելան։
Նա թագաւորըն չարացաւ.
Զհեծելն առին ու ի յետ դարձան։

Օտրանց հեծելն յառաջ եկին,
Զկամուրջն առին ու կանգնեցան.
Երբ Լիպարիտն ի յետ դարձաւ,
Նա չար հեծելն ի դէմ ելան։

Ըռումբ գըրին ամէն գիմաց,
Շատ խոցեցին զյաղթող վըկայն.
Հայէր ողորմ յաջ եւ ի ձախ,
Զոչ ոք գըտաւ իւր օգնական։

Գազանադէմ անօրինին
Սըրբոյն արեան ծարաւէին.
Զիւր սուրբ մարմինն ի հօն թողին,
Զգլուխն առին ի հետ տարին։

Երբոր հեծելքն ի յետ գնացին,
Ի ապա Սըսցիքն ի դուրս ելան.
Կըրկին առին և 'ի Սիս եկան,
Քաղքին կըրակ զարկին ւելան։

Շատ դարդատնէն աւեր ածին,
Յեկեղեցեացըն զանազան,
Երիցկանայք գերի տարան,
Սարկաւագունքըն միաբան։

Ճառագայթեց լոյսն ի վերան
Եւ սուրբ մարմնոյն ի հանգըստեան։
Քաջ Լիպարիտ, ուսիր Յոհան,
Քրիստոնէից համար մեռան։

Յոր տեղ նստին հաց ու ի սեղան,
Ժողովք բազում և շատ իշխան,
Յիշեն ըզնա սուրբ քահանայքն,
Տան ողորմի ամեն նըման։

Խէվ ՅՈՎԱՆԷՍ ԹՈՒԼԿՈՒՐԱՆՑԻՆ.
Կարճ և ողորմ ասաց զայս բանս.
Դուք յիշեցէք զինքն հանապազ,
Յաւակ ասէք ի մի բերան։

« Հոգւովդ սուրբ ես և անբիծ.
Զքեզ էր ընտրեալ Տէր 'ի յերկնից.
Պարծանք եղեր քրիստոնէից,
Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ.
Անձամբըդ քաջ Սամփսոն էիր,
Ցորժամ ճօչանըդ հագնէիր՝
Ուրթքն ? 'ի յաՀէդ դառնար մոխիր։ …
Զանձնըդ տըւիր վասն օրինաց,
Մէն կանգնելով հազրի դիմաց.
Քո սուրըտ շատ սրտեր երաց,
Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ …
Սըսայ երկրիս աստղ լուսատու,
Կանգնող էիր յամեն ժամու.
Ուրթքն 'ի յաՀէդ սարսէր մաՀու,
Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ։
Այն չար պաՀիկն որ քեզ Հասաւ,
Քեզլի օգնող չըկայր բնաւ.
Անձնըդ կարմիր գոյն ներկեցաւ։ Ո՛վ մեծ, &։
Զայն չարաչար մաՀն որ տեսար,
Կըսկիծ է մօրն որ դուն ծընար.
Աւա՜ղ ըզքեզ բերան Հազար։ Ո՛վ, և այլն։
Սըսայ երկրին պաղշայ ու ծառ,
Գոյնք ի գունաց ծաղիկ որ կայր՝
Հառաչանօք առին գիրար։ Ո՛վ, և այլն։
Կաթողիկոսք և վարդապետ,
Սուրբ քաՀանայք ամեն ի Հետ՝
Շատ արտասուօք սրտերն երետ։ Ո՛վ, և այլն։
Հիւսխայյին Հողմըն Հիմիկ՝
Սարգիս՝ յիշող եղաւ քեզիկ.
Դուն սիւն էիր Հայոց մեզիկ։ Ո՛վ, և այլն։

— Նշխար անազանեալ գովասանութեանցս՝ երաշխաւոր լիցի նախադունիցն 'ի յաղթանակս Սմբատեանց և այլոց սպարապետացն Հայոց՝ Ռուբինեանց և Հեթմեանց։

Ի մթագին և 'ի վերջալոյս ժամանակի անդ՝ միւս ևս պայծառ աստղ ծագէր անընդմէջ յետ Լիպարտի, Հեթումն այն և զուգակից իւր Զարմանդուխտ, որ նախ, ասեն, յաւուրս վերջին Կոստանդնի « սպան զքաջ զօ- » րապետն Եգիպտացւոց Նօմէր՝ 'ի դաշտին Ատանա- » յու … և արար յաղթութիւն մեծ. (և դարձեալ) սա » էր որ սպան զԱլի զօրավարն Եգիպտացւոց՝ յաւուրս » Լևոնի Վերջնոյ 'ի դաշտն Սոյ [1] ». իսկ ինքն, որպէս տեսաք կանխաւ (յէջս 184. 194) 'ի ձեռանէ ազգայնոյ մատնչի կորեաւ, սադրանօք օտար իշխողի՝ 'ի կողմանս Կյանչոյ, զկենակից իւր և զարդարև զարմանալին Զարման թողեալ արիական նաՀատակութեանցն այրաբար Հետևող։

Ցետին Հանդէս Հրճուանաց Հոյկական Հարստութեան 'ի Սիս՝ եղև 'ի 26 յուլիսի 1374 ամի, յորում ժամանեաց անդր Լևոնն Վերջին, իբր ավանչելեօք իմն անցեալ ընդ բանակս Թուրքաց և Եգիպտացւոց, որք կալեալ ունէին զանցս ծանօթ ճանապարՀաց և պաշարեալ իսկ 'ի Հեռուստ զքաղաքն. ընդ առաջ ելեալ նմա կաթողիկոսին՝ ուխտիւ եկեղեցւոյն և ամենայն աւագաց և փոքր մարդկան, երգովք և նուագարանօք և ջաՀալուցութեամբ մուծին յանտերունչ մայրաքաղաքն, 'ի դէպ ժամու. մինչ ձանձրացեալք յանիշխանութենէ, յետ մաՀուան կամ սպանման Գ. Կոստանդնի (յապրիլի 1373 ամին), խորՀէին կարճամիտք տալ զքաղաքն յԵգիպտացիս։ Ցետ աւուրց ընտրեալ Լևոնի գունդ մի Հարիւր յիսուն ձիաւորաց քաջասրտաց, առաքեաց 'ի ծովեզրն բերել զկին իւր և զմայր. զորս և զգուշութեամբ պաշտպանեալ նոցա՝ անդադար Հեծելութեամբ՝ բերին մինչև յԱնաւարզա, և անտի 'ի Սիս. ընդ առաջ ել Լևոն աշխարՀախումբ բազմութեամբ և չքեղ ևս Հանդիսիւ եմոյծ 'ի քաղաքն. և յետ երկուց ամսոց (24 սեպտ.) 'ի մեծի եկեղեցւոջ Ս. Սոփիայ օրՀնեցան թագաւոր և թագուՀի, նախ լատին ծիսիւ և ապա Հայկականաւ 'ի կաթողիկոսէն, ըստ առաջնոց թագաւորացն օրինի, պայծառ և բերկրալից Հանդիսիւ։ Ի նմին աւուր պատուեաց Լևոն զթիկնապաՀ իւր կամ զինակիր՝ Սոհիէր Տուլգար (Sohier Doulcart) փռանկ, որ ընդ նմա եկեալ էր, և յետոյ գերեկից իւր եղև, առնելով զնա ասպետ և մարաջախտ Հայոց, տալով ևս 'ի կնութիւն զՌեմի (Հռիփսիմի? կամ Ֆիմի) քոյր Կոստանդնի Գ թագաւորի, որ յառաջագոյն եղեալ էր կին Պեմունդի Հօրեղբօր իւրոյ։ — Այլ ոչ յամեցին ուրախականացն յաջորդել տխրականք, վասն երկպառակութեան քաղաքացեացն. յորոց ոմանք ընդ թագաւորին կամէին պաՀել և զերծուցանել զՍիս, իսկ այլք՝ մատնել այլազգեաց։ Սոքա յամաց Հետէ տիրացեալք բովանդակ դաշտայնոյն Կիլիկիոյ, ունէին 'ի Հեռուստ զմուտ և զել քաղաքին. այսպէս իմն դաշինս կռեալ՝ զի առցեն Հարկ 'ի քաղաքացեացն և թողցեն մուծանել ռոճիկս 'ի ներքս. և էին երկու գլխաւորք այլազգեացն, Տավուտ պէկ և Ապուպէքիր ոմն։ Ի կամել Լևոնի՝ ըստ նախասաՀմանեալ դաշանցն՝ Հաստատել և ինքնին ընդ նոսա, բանսարկուք ոմանք գրգռեցին զՏավուտ ընդդէմ թագաւորին, խաբելով զերկոսին ևս, զբէկն և զթագաւոր, զմին միւսոյն դաւադիր ցուցեալ։ Թէպէտ յաջողեաց Լևոնի կնքել ընդ սմա զդաշն Հաշտութեան, այլ ընդդէմ յարեաւ Ապուպէքիր և պաշարեաց զքաղաքն, զոր առաւել ևս պնդեաց կուսակալն Հալպայ՝ Աշըդ Թիմուր Մէլէք՝ Մէրտինցի, եկեալ բազմութեամբ զօրաց, ըստ սադրանաց մատնչաց ոմանց, զամիսս երիս. որոց՝ ոչ կարելով զդէմ ունել Լևոնի սակաւաձեռն գնդիւն, կամ պաշտպանել զընդարձակութիւն քաղաքին, (փարսախաչափ երկայն ըստ իւրոյ պատմչին), կամովի Հուր արկ, զի մի՛ թշնամեաց մատնեսցի յաւար, և ապաւինեցաւ 'ի բերդն. ապա ստիպեցաւ լքանել և զայն, և անկանել 'ի վերին դղեակն, թափեալ զայն 'ի ձեռաց ապստամբացն կամ մատնչաց, ճարտարութեամբ Դոմինիկեան միանձին ուրուք՝ ընկերի լատին եպիսկոպոսին թագաւորօրՀնողի. այլ ոչ կարաց ընդերկար ժուժկալել, միրաւորեալ իսկ գոլով 'ի մարտի, վասն թօթափելոյ իշխանացն և եկեղեցականաց 'ի նմանէ և անձնատուր լինելոյ յայլազգիս, և Հազիւ ապաաւորաց ոմանց մնալոյ առ ինքեան։

[1] Այսպիսի դէպք ոչ նշմարին 'ի նորագիւտ փռանկերէն պատմութեան Ցօվհաննու Տարտէլի, որպէս և ոչ առ մերոյին պատմիչ։

Ապա առեալ յամիրայէն թուղթ երդման՝ էջ առ նա, յանձնեաց զբանալիս բերդին և զմնացորդ արքունի գանձուն, 'ի կէս ամսեան ապրիլի 1375 ամի, և ընդ կնոջն և երախայ դստերն, և ընդ Մարեմայ դշխոյի՝ կնոջ Կոստանդնի Գ՛ թագաւորի, և հաւատարմին իւրոյ Սոհիերի, վարեցաւ 'ի Բերիա և անտի 'ի Գահիրէ Եգիպտոսի՝ առ սուլտանն: — Գրէ ոմն 'ի մերազգի ժամանակակցաց. « Ի ՊԻԴ (Թուիս) բարկացաւ Աստուած 'ի վերայ քաղաքին Սսոյ, ու աղարեցին զբերդն՝ սեպտեմբերէն ու » մինչուր 'ի յապրիլ ԺԶ[1], ու տուին զբերդն, օրն ուրբաթ. ոչ այլ իրաց՝ քանց 'ի սովոյ. որ մարծպան մի » ցորենի ԳՃ ԳՌ, չէր 'ի գտվել, որ կերան կատու մէշ... » Ո՛վ տեսնոյր զմեր խաչերոյն արհամարհանքն ու աստուածաշունչ գրվոյն կորտել, զսուրբ սեղանացն կործանե՛ն »: — Այլ ոմն համառօտ ասէ. « Ի գերութիւն » անկան եկեղեցիքն և գրեանքն »: Հակիրճ այլ յոյժ սրտառուչ և լերդախոց՝ Զաքարիա ոմն եպիսկոպոս ականատես. « Առաւ քաղաքն Սիս, և ես ... պատահեցայ անդ: Բայց զողբ և զողորմագին բանս՝ զոր ետես » ակն իմ, ո՞ կարէ պատմել գրով. զի տեսի զակունս » պայծառ և զարեգակունս, զաստեղս և զլուսինս՝ զի » կային անկեալ ափի »: Երկարագոյն ողբոց և նկարագրութեանց, զոր գլացան մեզ ժամանակք կամ ապշութիւնք, ոչ անբաւական փոխանակ լիցի այսպիսի խորագոյ վճիռ. զոր մարթ էր արդեօք դրոշմել 'ի վերայ գերեզմանական բաղդի կրսերոյ քեռն Անւոյ և յետին մայրաքաղաքի Հայոց, Նսեմացեալն Սսոյ:

Քանզի ոչ ևս թողու 'ի ձեռս Հայոց՝ այլ 'ի սպառ գրաւել և 'ի տէրութիւն իւր յարել կամք էին սուլտանին Եգիպտոսի, հաւանելի է թէ ոչ շատ ապականեաց զՍիս, այլ յաւար միայն մատնեաց, և կարգեաց նմին կուսակալ զ'Եաղուպ-շահ ոմն[2]. այլք՝ Աք-Պուղա կոչեն զառաջին կուսակալն[3], զոր 'ի հարկէ յաջորդեցին և այլք ընդ իշխանութեամբ սուլտանացն, և հանդարտեաց երկիրն 'ի հինէ: Այլ յետ սակաւ ամաց (1389), Մէլիք Լոմէր ոմն բռնակալեալ՝ ոչ գիտեմ որպիսի պատճառաւ եսպան զԹէոդորոս կաթողիկոս և վեշտասան տանուտերս կամ պարոնայս ընդ նմին: Սուլտանն Եպու Նասըր յամի 1415 'ի թղթին առ դուքսն Վենետկոյ՝ խոստանալով շնորհել համարձակ երթևեկ վաճառականաց նորին, բաց յայլոց գրեաց զայսմանէ և կողմանական Սսոյ. յորմէ յայտ լինի ոչ միայն իշխանութիւն նորա, այլ և տակաւին անցք վաճառականաց Իտալացւոց, ընդ թագաւորաբնակն Հայոց՝ դաշնակցաց իւրեանց[4]: — Ի կէս ԺԵ դարու յետ հաստատութեան Էջմիածնի աթոռոյն, որպէս 'ի վերդ յիշեցաք, Կարապետ կաթողիկոս Սսոյ Նորոգեաց զիւրն աթոռ և զեկեղեցիս, զորմէ բազում գովութեամբ գրէ ժամանակակից ոմն, Նախնեաց շինարար հայրապետացն հաւասար ցուցանելով զնա. բայց յետ կիսոյ այնր դարու դարձեալ բռնաբարեալ կեղեքեաց զՍիս՝ յամին 1467, բազում անգամ յիշեալն Շահսուար Զիւլգատրեան. « Խորհեցաւ չարութեամբ՝ Սսոյ կաթողիկոսին և բերդին, ուստի բազում » հեծելազօրօք խաղաց 'ի վերայ Նորա՝ 'ի յունիս Բ օրին, » և հրկէզ արարեալ անցեալ գնաց. և էառ զԱտանա, և » զՏարսոն: — Եւ դարձաւ մրմռալով 'ի վերայ բերդին » Սսոյ, և այրեաց. և Զաք? պարոն կայր 'ի բերդն. պատերազմ արարին քրիստոնեայքն 'ի բերդէն. շատ » մարտիկ սպանին. բայց աւելի տագնապելով՝ տուաք » զբերդն 'ի դեկտեմբերի երիք: Եւ 'ի թուին ԶԺԷ « (1468) գնաց Շահսուարն դարձեալ 'ի Շամցուն երկիրն, և առեալ հազար տուն տաճիկ Շամցի՝ եկից 'ի » Սիս քաղաքն: — Դարձեալ եկն Շամպուն մեծն, և » Շահսուարն գնաց ընդդէմ նոցա. և Սառ Թուրքերն » և Շահցիքն եղան մէկ՝ 'ի մայիս ամսոյ ԺԴ, և արարին » պատերազմ. և խլեցին զբերդի պարոնին զձիան և ըզջորեստանն. և Պարոնն բռնեց զքրիստոնեայս և ետ 'ի » ճորն. և քաղաքացիքս ամէն թողաք զտուն և ըզգակ. » և Ֆարսահ (Վարշագ) Թուրքման թալնեց զքաղաքն, » և շատ ըռզակ առաւ. և զեկեղեցեաց անօթս կողոպտեցին. և զամենայն աւերութիւն զոր արարին՝ չեմ » բաւական ընդ գրով արկանել: Եւ մեք եկաք 'ի Կոպիտառոյ բերդն »: Ի բանից յիշատակագրիդ յայտնի, զի տակաւին ոչ միայն բազմաթիւ Հայք բնակէին 'ի Սիս, այլ և բաւական ազատութեամբ և ազնուականութեամբ, որք և կարողք էին զէն առնուլ և մարտնչել. այլ յետինս այս հուր և աւեր՝ սաստկագոյն եղև քան որ 'ի ժամանակի բարձման թագաւորութեանն: Թէպէտ Եգիպտացիք թափեցին դարձեալ զՍիս 'ի բարբարոսէն. այլ յետ սակաւուց յառաջեալ հզօր զօրութեան Օսմանեանց՝ և հան 'ի նոցանէ, ձեռամբ Խալիլ փաշայի, յամի 1487, յորում կուսակալ Սսոյ էր Սիպէկ կամ Եէշ պէկ ոմն[5]. առաւել ևս խաղաղացաւ երկիրն՝ յորժամ բարձան իսպառ սուլտանութիւն Եգիպտոսի և տէրութիւնք Զիւլգատրեանց, Գարամանեանց և Ռամազանեանց, թէպէտ և հինահարութիւն անհրահանգ և անհնազանդ տոհմից՝ ոչ սակաւ անգամ տագնապ և վնաս հասուցին և Սսոյ: Զոր օրինակ, ըստ յիշատակագրաց, յամի 1527 « Եկաւ Քալընտէրին ճէլալայ 'ի Սիս քաղաք. մարդն » փախաւ՝ 'ի բերդն ելաւ. շատ աւերում եղաւ. նա Աստուած ազատեց զՍիս քաղաքն 'ի ձեռն անօրէն Քալընտէրէ »: Եւ յամին 1598, ըստ ժամանակագրութեանց Առաքէլի, « Թալնեաց և կողոպտեաց Լաւանդն՝ » որ Սաթըրճի կոչիւր՝ զՍիս քաղաք Կիլիկեցւոց »: Զայսմանէ սուղ ինչ երկար գրէ Եփրեմ կաթողիկոս. « Եկն ոմն Սատուրճի անուն՝ անթիւ և անհամար զօրօք » յԱնթէպոյ... 'ի Սիս, սակս Սոխտայք անուանեալ » ապստամբիցս, որոց գլխաւորին անուն Մօհտի օղլու » կոչիւր, զոր բռնութեամբ խորհէր տիրել քաղաքիս » Սսոյ. ուստի 'ի գալ Սատրճւոյն, եթող զքաղաքս և » փախեաւ. իսկ բնակիչք քաղաքիս 'ի բաց լքեալ զամենայն ստացուածս և զկարասի իւրեանց, միայն զձի.

1 Ի ՊԻԴ թուականի որ է 1375՝ ուրբաթ օր յապրիլի վեցն հանդիպի և ոչ 'ի 16. իսկ ԺԶ երկուշաբաթի օր է. այլ զի համբաւ կալանաց Լևոնի եհաս 'ի Հալէպ 'ի 21 ամսոյն, պատշաճի ԺԶ թիւն:

2-3 Վայլ (Weil), Պատմութիւն Ամիրապետաց, Դ. 524. Գ. 504:

4 Դիւանք Վենետկոյ, Commemoriali, X, N.° 210.

5 Համմէր Ա. 569, և Գէորգ 'ի Պատմութեան Օսմանեանց:

» ռանէ որդւոց և ընտանեաց կալեալ՝ փախեան և զեր֊
» ծան մազապուրծ ». բայց ինչք նոցա և եկեղեցեացն
կողոպտեցան 'ի հրոսէն: Յետ ամաց (1605), « Դաւիլ
» ոմն անուն պաշարեաց զքաղաքն Սիս, 1500 հետևա֊
» կօք. իսկ բնակիչք քաղաքիս ամրացան 'ի բերդն՝ յեր֊
» կիւղէ նոցա. և որքան եկին և մղեցան 'ի կռիւ, այն֊
» քան լի ամօթով յետս դարձան հակառակորդացն
» դասք և ամենայն կերպ հնարից նոցա... վասն զի զա֊
» ւուրս երեսուն նստան շուրջ զքաղաքաւս, և ոչ կարա֊
» ցին առնուլ զնա. յետ որոյ իբրև զամպ փարատեցան,
» և 'ի բաց չուեցին չուառականքն: Բայց... ժողովուրդքն
» Սսայ թողեալ զՍիս՝ 'ի յԱտանա անկանէին, երկու֊
» ցեալ վասն կրկին գալստեան չարադէմ գազանին »:
Սոցին հետևողք գտան և Քօզանեանքն մինչև 'ի մեր
ժամանակս: — Բայց և յետ բարձման ազգային պետու֊
թեան, ընդ Եգիպտացւովք և ընդ Օսմանեամբք՝ ներքին
տեսչութիւն ժողովրդեանն՝ երևի մնացեալ ընդ երկար
'ի ձեռս Հայոց, և ըստ օրինակի Զէյթունեայց յանձան֊
ձեալ չորիւք ոմամբք տանուտերամբք, ըստ չորից աւագ
պաշտօնէից թագաւորացն իւրեանց. որպէս 'ի թղթին
զոր յամի 1585 գրեցին եպիսկոպոսունք ոմանք 'ի Հռովմ
վասն ընտրութեան Ազարիայ կաթողիկոսի իւրեանց,
ստորագրեն չորք աւագքն Սսոյ՝ այսպէս. « Մարշաճ
» իշխան՝ աթոռակալ Սսոյ ... Լիպարիդ իշխան՝ աթո֊
» ռակալ Սսոյ. Յանուզ իշխան՝ աթոռակալ. Մղտիսի
» Պուտախ Ղարիպի տղայ՝ իշխան Սիսոյ »: — Սոցա
ժամանակակից վաճառականք ոմանք Սսեցիք յիշատա֊
կին 'ի դիւանս օտար աշխարհաց, ուր եկեալ էին վաճա֊
ռականութեան աղագաւ, 'ի Վենետիկ և 'ի Մեսսէնէ.
որպիսիք են, Սիմոն որդի Թորոսի, և Ղազար որդի Յով֊
հաննու, յամի 1583-4, գործակիցք Ատանացւոյն Ստե֊
փաննոսի և Դոմինիկոսի. զորոց զվաճառս ինչ տարեալ
Սիմոնի 'ի Հռովմ, վախճանի անդ: Ի սիւնս կճեայս մե֊
ծի կաթողիկէին Վենետկոյ՝ Ս. Մարկոսի՝ պտանին փո֊
րագրեալ անուանք այլոց ևս Սսեցւոց, որպէս Սարգսի
ուրումն[1] անդստին յ'ամէ 1543 կամ 1556:

Թիւ տանց կամ բնակչաց Սսոյ անստոյգ է. մի 'ի
յետին այցելուաց ընդ բնաւ 4 կամ 5000 բնակիչս համա֊
րի. իսկ 'ի մերայոցս ոմն 100 տուն միայն Հայոց գրէ, այլ
ոմն 300, միւս 400. միւս ևս մօտագոյն ժամանակաւ՝
700 տուն: Նորագոյն ևս գրիչ յամի 1882 դնէ 500:
Տունքն տափարակք են և դար զդարիւ լերինն զետե֊
ղեալ, մանաւանդ յարևելակողմն շուրջ թատեր երևու֊
թիւ. և 'ի միջոցսն ամբառնան նոճիք և մոլաթզենիք: —
Ամարանի մեծ մասն բնակչաց քաղաքին՝ վասն սաստ֊
կութեան տօթոյն՝ խոյս տուեալ ելանեն 'ի հովոցս, և
վանականքն գնան 'ի Վահկա[2]:

90. Որքան չէն և բազմարնակ հարկ էր լինել սահմա֊
նաց աշխարհամուտ մայրաքաղաքին Լևոնի և Հեթմոյ,
մարթ է դիւրաւ գուշակել. այլ թերևս ոչ նոյնպէս՝
քանի՛ անապատ և ամայի են արդ, և անծանօթացեալք
'ի բազմաց և յինէն. ամենևին աննիշք յաշխարհացոյցս,
և անյիշատակք 'ի գիրս ուղևորաց. վասն որոյ ափշու֊
թեամբ և խարխափելով իմն զլերամբ Սիսուանայ՝ նշա֊
նակեցից զդոյզն ինչ նշմարս տեղեացն, և ոչ զստուգու֊
թիւն այնոցիկ երաշխաւորելով՝ զգրիցն և զանուանց:

Ժամաւ հեռի 'ի քաղաքէն յՆԼ. հիւսիսոյ 'ի մերկա֊
ժայռ լեռնայլրի ուրեք են աւերակք կեավուր քէօյ ա֊
նուանեալ գեղջ, ըստ Լանկլուայ, և եկեղեցեակ մի կիս֊
աւեր նկարէն որմովք. յորոյ յատակին նշմարեաց նա
դամբանս խորտակեալս թերի փռանկ արձանագրու֊
թեամբք, որպէս (Je) han Fort qui trespasa le m. այս֊
ինքն Յովհան Ֆորդ որ հանգեաւ 'ի ... Միւս... N de
MCCCLXI... Crist. Que Die... Յամի 1361 Քրիստոսի.
Աստուած (հանգուսցէ զնա). — (Ci g) it Dame Marie de
Canc. Աստ հանգչի Տիկին Մարիամ կանճ ..: Ի բեկ֊
բեկ բաւից այտի որք 'ի բեկորս քարանցն, գուշակին
գերեզմանք փռանկաց յաւուրս վերջնոց թագաւորաց.
մարթ է և այլոց նախագոյն եկելոց փռանկաց սեփական
և արքունատուր հանգստարան լինել տեղւոյն. որ և
թուի ստորագրեալն յԻնճիճեան Հօրէ. « Հանդէպ Սսոյ՝
» իբրև ժամաւ և կիսով հեռի անտի՝ 'ի վերայ ապառա֊
» ժուտ լերին՝ է կործանեալ եկեղեցի, որոյ որմունք
» ևեթ մնացեալ կան այժմ իբրև կանգնաչափ բարձրու֊
» թեամբ, և հիմն նորա 'ի տեղիս տեղիս է նոյն իսկ
» թանձրութիւն առապար լերինն: Ի ներքին ճակատ
» եկեղեցւոյս երևին տակաւին տեղիք խորանաց, իսկ 'ի
» դուռն անդ են երկու սեաւ ամուր վէմք, և խաչք փո֊
» րագրեալ 'ի նոսա. 'ի շրջակայս երևին և հետք պարըս֊
» պաց մենաստանի, և արտաքոյ յարևմտեան կողմն՝
» աղբիւր 'ի վիմի աքանչելի անմահական ջրոյ: Զայս մե֊
» նաստան ասացին լինել Արքակաղին անուանեալ մե֊
» նաստան նախնեաց 'ի ժամանակս Ռուբինեանց, որ
» յառաջագոյն ծածկեալ գոլով յանտառախիտ կաղնի
» ծառոց՝ անյայտ էր մնացեալ ամենևին տեղին. բայց
» յաւուրս Միքայէլ կաթողիկոսին Սսոյ՝ որ նստաւ յա֊
» մին 1737, միաբանք ոմանք ընթերցեալ 'ի գիրս թէ
» հանդէպ Սսոյ է մենաստանն, յուզել սկսան զամե֊
» նայն լեառն անտառացեալ յանհամար կաղնի ծառոց.
» և 'ի մացառախիտ վայրս լերին անհնարին աշխատու֊
» թեամբ գտին զայսոսիկ հետս: Յայնժամ ապա հրա֊
» ման տուեալ Միքայէլ կաթողիկոսի հատանել զամե֊
» նայն ծառս բուսեալս 'ի մէջ եկեղեցւոյն և մենաստա֊
» նին, և սեղան ուղղեալ՝ մատուցին հանդիսիւ պատա֊
» րագ առաջի բազմութեան ուխտաւորաց: Մին 'ի միա֊
» բանից գտողաց զտեղին՝ պատմեաց մեզ զայսոսիկ »:
— Արքակաղին աթոռ էր եպիսկոպոսին Մսսայ, և զի
քաղաքս այս ոչ սակաւ հեռի է 'ի սահմանաց Սսոյ, ոչ
թուի ճահաւոր ստանոր լինել Արքակաղնոյ, այլ 'ի սահ֊
մանս այնր քաղաքի:

1 Յետին ծանուցեալ իմձ Սսեցիք 'ի Վենետիկ՝ են Աղէքսանդր որդի Պապայ (1629), Սեֆեր որդի Մկրտչի (1620), որոյ բերեալ էր այսր 'ի վաճառ մորթս զոմշոյ և օձենիս. Խոջեր, 1634: — Ի կէս ԺԷ դարուս յիշի ընդ նուիրատուս վանաց Անկիւրիոյ՝ Խօջէնտէր ոմն Սսեցի:

2 Այսպէս ծանուցին զայս և յամի 1673 առ Նուանդէլ դեսպան փռանկաց. Sis . . . estoit seulement habitée huit mois de l'année, et que les habitans l'abandonnoient les quatre autres, à cause d'excessives chaleurs qu'il y fait et se retiroient dans une autre qui en est à une journée, où l'air est plus rafraischi. — *Journal* d'Ant. Galland, I. 3.

Իբրու երկու մղոնաւ 'ի հիւսիսոյ Սսոյ Նշանակլի Թօփուզու գիւղ, այլ որպիսի՞ և յորմէ բնակեալ՝ ոչ գիտեմ։ — Ի սմին կողման փարսախաւ ինչ հեռի 'ի քաղաքէն՝ 'ի ձորամիջի գետոյն յիշեն Նոր այցելուք քաղաքին՝ բերդ մի Դուրրիս? (Turris) զայնու՝ անուն. զոր ոչ կարեմ ստուգել ըստ հայումս. որպէս և ոչ զԱնաւայ կամ զԱնտիլ զայն բերդ, կամ ըստ Լանկլուայ՝ Անդոն զայն, 'ի բարձու լերին, ժամու և կիսով 'ի հիւսիսոյ ելից քաղաքին, իսկ ըստ Ֆավրի՝ աւելի ճանապարհաւ հեռի։ Բայց թուի ինձ Անդուլ կոչեցեալ սորա, զի յիշի յայս անուն Անապատ, զոր յամի 1238 « Բարեպաշտ թագաւորն Հեթում և աստուածասէր թագուհին Զապել » անուանեցին զսա իւրեանց հովանոց »։ Աստանօր յայնմ ժամանակի Գրիգորիս երգեցող ոմն Սըսցի գրէր աւետարան մի վասն Գրիգորի պատուաւոր վարդապետի և աշակերտի Նորա Պօղոսի, ըստ յիշատակագրին,

« Ի գըրչէ յոյժ ճարտարի
Ուռհայեցի Կոստանդընի,
Փոխակերպեալ յայս քարտէնի »։

— Յարևելից սոցին սակաւուք հեռի այլ բերդ՝ Գարա Սիս՝ 'ի համանուն լերին, երևի նշանաւոր ինչ ամուր կամ տեղի լինել։ Երկրաքննին Աւստրիացիք զընութիւն լերինն ծանեան պղուտոնական բիւրեղային կազմութեամբ. այլ ինչ ոչ եհաս յիմ գիտութիւն։ Ոմանք յեւրոպէացի գիտնականաց կարծեն զբերդս զայս լինել հինն Կադրա, Cadra, որպէս և զԱնտալ-զայլէ՝ Դաւարա, Davara (տուցէ վերոյիշեալն Դուրրիս). բերդք ամուրք՝ յորս Կլիտեան ցեղ Կիլիկեցւոց՝ յառաջին դարու Քրիստոսի՝ ամրացեալք՝ ոչ կամէին տալ հարկս Հռոմայեցւոց. բայց այլք համարին զնոսա բնակիչս Քարուտ Կիլիկիոյ՝ 'ի ծովակողմն։ — Մերձ 'ի սոսա է և Կետիկլի[1] գիւղ, առ որով յողողակ գետնի՝ տեսան հետք հանքածըխոյ, այլ ոչ առատ դատեցան։ — Սակաւուք հեռի 'ի Հա. Կէտիկլեայ Նշանակի Մարաշ գիւղ. յայս անուն նշանակի և այլ գիւղ յոտս լերանց անջրպետաց գետահովտին Սարոսի, 'ի մտից հիւսիսոյ գաւառիս Սսոյ։ — Մերձագոյն 'ի սա 'ի նոյն 'ի հիւսիսոյ կուսէ՝ Զոխախ[2], յոր անուն դոյ և այլ գիւղ ժամուք հեռագոյն յելից հիւսիսոյ, վասն որոյ և կոչին Վերին և Ստորին Զոխախ, յորս միահամուռ 200 տուն Հայոց նշանակէ ոմն 'ի մերայոց, այլ որք կիսով չափ նուազ։ Յերկոցուն միջի նշանակին՝ 'ի հարաւոյ ընդ հիւսիս գնալով՝ Գուրա-պունար?, Թէնքիլի կամ Թէնքէրլի։ — Ի հիւսիսակողմն Վերին Զոխախոյ նշանակի Գարշա?-տէրէ կամ Տէրէ-Գարշա լեառն, զոր և համարիմ անջրպետ սահմանաց Սսոյ և Հաճնոյ՝ յայնմ կողմանէ։ Լերինքս միջասահմանք երկոցուն վիճակացս, ըստ Դեսիէէի, մեծատեսիլ դիրս ընծայեն քան զամենայն կողմանց Ջահանոյ, որ տակաւին գետակ մի գոլով՝ սահանաբար վազէ ընդ վախս. և են լերինքն պսակեալ պուրակօք մայրեաց և եղևնեաց, զուարճալի ապաւէնք չուաբնակաց 'ի տապս ամարայնոյ։

Յարևմտակողմն Սսոյ Նշանակեալ գեօղք են, Տուզլախան, իբր փարսախաւ հեռի, և մերձ նմին Զարաւ. որոյ մերձ 'ի հարաւոյ՝ Պջիկ գիւղ։ — Ի հիւսիսոյ արևմտից հինգ կամ վեց ժամուք հեռի 'ի Սսոյ, և իբրև նոյնչափ 'ի Ֆէյլէն աւանէ՝ Մուսուլա գիւղ, ուր եկին յամի 1836 տեղաքննին Անգղիացիք՝ Չիզնէյ և Էնզուըրտհ։ — Ի հիւսիսոյ Մուսուլայ է Գալպազ-բէլիէ գիւղ։

Ի հարաւոյ արևմտից Սսոյ Նշանակին գեօղք Թուրունճլու, Պէօյիւք բէօյ, Թուղլան, և 'ի միջոցի սոցին՝ բերդ մի աւերակ, և այլ ինչ անստոյգք։ Երկու և կէս ժամուք ևեթ հեռի 'ի Սսոյ՝ յայսմ կողման եսես Տէվիս ոմն մի կանգուն և այլս խորտակեալս, չիրիմս վիմափորս և ստիճանաձև հատեալ վէմս, և ընդ մէջ տեղւոյս և Սսոյ՝ ոչ սակաւ հին գիւղատեղիս։ Յայսմ կողմանէ յաւարտ դաշտին Սսոյ և մերձագոյն յԱտանա՝ յետին չէն Սսոյ առ է Հ. Ինճիճեանն՝ զՄալխուդրըր գիւղ Աֆշարաց։ Նոյն և յարևելակողմն Սսոյ մերձ 'ի սահմանակցութիւն Մարաշայ գրէ զԳապուրկալը գեօղ՝ առ Սըմբոս չամբուտ դաշտաւ, յորոյ հիւսիսակողմանն բերդ 'ի վերայ քարաբլրոյ։ Բայց ոմն 'ի նոր ուղևորաց՝ զՍըմբոս գրէ գետօժանդակ Սավրունի, նոյն կամ խառնուրդ Սսոյ գետոյն, բղխեալ 'ի Պուճաղ լերանց, որ է անշուշտ վերոյիշեալն Պճիկ. իբրև ժամու 'ի հիւսիսոյ Անազարբայ խառնին Սըմբոս և Սավրուն, և երիւք ժամուք 'ի հարաւոյ նորին՝ ընդ Ջահանայ։

Այսորիկ ըստ նորոցս դոյզն նշանակաց. գրեաթէ ոչ ինչ և 'ի նախնեաց գտանեմք աւանդեալ յայսքան կարևոր սահմանս Սսոյ. ուրանօր թուին ինձ և տխրալի տեղիքն, ուր՝ ըստ բանից արքունի պատմչին մերոյ, յետ յոյլեաց յաւեր մատնութեան քաղաքին՝ յառաջնումն արշաւանի Եգիպտացւոց (յամի 1266), ոչ կարելով նոցա առնուլ բերդին, գիմեցին « 'ի տեղի ինչ քարանձաւ, » որ դղեակ էր լեալ 'ի հնումն Կեմալ անուն, և միւսոյն » Բեկնքար. բազումք էին հաւաքեալ կանամբք և որդւովք. և եկեալ անօրինացն 'ի վերայ նոցա. և նոցա » տեսեալ զայնքան բազմութիւն անօրինացն՝ լքան ձեռք » նոցա և ոչ կարէին պատերազմել. և անօրէնքն առ 'ի » վերայ եդեալ կոտորեցին զայնքան բազմութիւնն. որ » և ասէին թէ երկու բիւրս սպանեալ անդ յայնմ աւուր » և զմնացեալսն 'ի սրոյն՝ գերի տարան զկնի իւրեանց »։

91. Յետ մայրաքաղաքին նշանաւոր տեղի հարկ էր լինել նստոց արքեպիսկոպոսի Նորին և կոչեցեալ սեփական, որում և 'ի դէպ իսկ մերձաւոր լինել 'ի նոյն. և էր այն Դրազարկ. ոչ միայն վասն բարձրապատիւ աթոռոյն՝ այլ և հնութեամբն և հրահանգաք գերազանցեալ զամենայն վանորէիւք աշխարհին. և այսպիսի գոլով՝ որպէս և յետագայդ ցուցցէ, զարմանք և ցաւ կանխեն առ 'ի չգիտելոյ ստուգիւ զդիրսն, և ոչ ուրուք յիշելոյ յուղևորաց կամ 'ի բնկաց երկրին, բայց միայն Ինճիճեան Հօր, որ այսպէս գրէ. « Դրազարկ անապատ. եկեղեցի յանտառախիտ ձորամիջի, հեռի 'ի Սսոյ իբրև » միօրեայ, յարևմտեան կողմն նորա, իսկ յԱնաւարզայ » իբրև երկօրեայ. անցանէ առ նովաւ և առու. երևին » անդէն նաև աւերակք ինչ նախնի հռչակաւոր մենա-

[1] Այս և այլ գիւղքն նշանակին 'ի Ռուս աշխարհացուցի։

[2] Զոքատ գրեալ է յաշխարհացուցի Ռուսաց։

*» տանին... Լինի 'ի Դրազարկ ուրկումիլ (պտուղ)[1] » գունով դեղին, և կաղին առատ, որպէս և 'ի Սիս »:*

*Առաջին 'ի պատմչաց մերոց յիշատակող տեղւոյս՝ Մատթէոս Ուռհայեցի՝ համարի զտեղին « 'ի գաւառն Անաւարզայ ». զորոյ սահմանս ոչ ըստ այժմեան տեսութեան՝ այլ ըստ այնր ժամանակի՝ պարտ է նկատել, յորում Սիս չև ևս էր մեծացեալ, իսկ Անաւարզա՝ ոչ միայն գաւառ այլ և աշխարհ անուանէր, զՍիս ևս յինքեան բովանդակելով. իսկ այլք բնաւ ինչ չասեն վասն դիրին և սահմանաց, յաղագս ակնադիտակ իմն և աշխարհածանօթ գոլոյ տեղւոյն առ նոքօք. և ոչ լոկ առ մերսն, այլ և առ արևմտեայս, զէթ 'ի գրուածս ինչ նոցին կամ 'ի թարգմանութիւնս հրովարտակաց Հայոց՝ ստորագրելոց յեպիսկոպոսէն Դրազարկու՝ իբրև յարքունի քարտուղարէ. դոքա աղուական իմն պարզմտութեամբ՝ ըզհայկական ձայնն ընդ փռանկականին զուգեալ՝ թարգմանեն զԴրազարկն՝* Trois-arcs, *և 'ի լատինն Երից կամարաց վանք կամ աբբայ,* Abbus Trium Arcium. *որպիսի են ստորագրութիւն Յովհաննու (յետոյ կաթողիկոսի) արքեպիսկոպոսի Սսոյ, յամի 1201, Լևոնի Մեծի յառաջնում հրովարտակի տուելոյ առ Գենուացիս. գրի ևս առ Լատինս* Abbatia de Tresarco: *Հետաքննին ևս է հայերէն անուանն ստուգաբանութիւն կամ վարկած առ մերայինս իսկ, առ որս միաբան առ պատմիչս և առ յիշատակագիրս գտանեմք գրեալ Դրազարկ, և համարիմք ստուգաբանել Դրան զարկ. բախումն, յանծանօթ ինչ մեզ պատճառէ այսպէս աւաղրեալ. բայց արքունական պատմիչս հնագիր և ընտիր՝ ստէպ և ամենայն ուրեք Թ տառիւ գրէ Թրազարկ. և հարկ է թէ ոչ վայրապար, այլ յայլ իմն տուչութենէ գիտիցէ պատճառս այնպիսի կոչման. ոչ վարկպարազի դրան բախումն, այլ Թրի և սուսերի զարկուած, եթէ քաջին Թորոսի, և եթէ այլոյ ուրուք հուժկու բազկի. քանզի և անծանօթ է ժամանակ հիմնարկութեան վանացն, և թուի կանխել քան զՌուբինեանցն եկաւորութիւն. նա զի և Թորոս Ա՝ նորոգող նորին կոչի 'ի սկիզբն ԺԲ դարու, 'ի ձեռն երկուց իմաստուն վարդապետաց, աշակերտաց և գործակցաց մեծի Վկայասիրին Գրիգորի. մին՝ Գէորգ Մեղրիկ հայրենեօք յԱնալիւր գեղջէ Վասպուրականի, որ զամս յիսուն ճգնեցաւ միայնակեցութեամբ չորաճաշակ և տըքուն. « օրինակ բազմաց եղեալ և հայր խոստովանութեան լինէր ամենայն Հայաստանեայցս », ըստ Ուռհայեցւոյն. որ և ժողովեաց « անդ զամենայն դասս ճգնաւորացն Քրիստոսի. և հաստատեաց անդ կարգ և կրօնք զառաջին սրբոց հարցն »: « Անդադար լինել 'ի պաշտօնն զցայգ և զցերեկ և հանապազ պահօք կատարել, և առանձինն ումեք ոչ ինչ լինել, բայց 'ի հասարակաց տանէն[2] »: « Եւ եդ զսահմանս կանոնի նոցա գրաւորական հաստատութեամբ, որ կայ մինչև ցայսօր ». յաւելու արքունի Պատմիչն: Զնոյն կարգ հաստատեալ էր նորա և 'ի Խորին անապատն. և որպէս գուշակի 'ի բանից յոլովից պատմչաց՝ որ զայս յիշեն, արդարև ճգնաւորական և աղօթական անձուկ կեանք էին միաբանիցն. վասն որոյ և յաճախ անապատ և ճգնաւորանոց կոչի, մանաւանդ յառաջին ժամանակս. այլ միշտ և զդրուատն անանջատ ունելով, մեծ, սուրբ, հրեշտակաւոր, ականաւոր, հռչակաւոր, գերահռչակ: Ինքն մեղրաբան վարդապետն Գէորգ եօթանասնամենի վախճանեալ՝ անդ թաղեցաւ յամի 1114. գործ մի կարևոր յեկեղեցւոյ մերում թողեալ՝ զկարգաւորութիւն ճաշոց գրոց, յաւելմամբ տօնից և պատշաճ ընթերցուածոց, հրամանաւ և հաճութեամբ Գրիգորի Վկայասիրի: Յօնացոյց մի գրեալ յամի 1287, 'ի յառաջաբանի ցանկի տօնից Սրբոց, ասէ զայն կարգ « ընկալեալ է Հայաստանեայց եկեղեցի՝ ընտրութեամբ սուրբ վարդապետացն նախադրակին տանն սուրբ ուխտին Դրազարկու ». վկայելով այսու նախնութեան վանացս ժամանակաւ կամ մանաւանդ պատուով: Յետ երեքտասան ամաց (1127) առ Գէորգեաւ հանգուցաւ ընկերակից նորին և « կանոնադիր Դրազարկուն[3] »* Կիրակոս *վարդապետ, « նմանեալ առաջին սրբոցն, ուսեալ զամենայն կտակագիրս Աստուծոյ, և ամենայն խորին քննութեան հասու եղեալ, լիապէս հասեալ 'ի վերայ հին և նոր կտակարանացն Աստուծոյ ... Եւ կոչեցաւ վանքն այն՝* Գեբեզմանատուն սուրբ Վարդապետացն *»: Յորոց մի եղև յամի 1162 « և ամենագովելին* Բարսեղ *վարդապետն, աստուածաշնորհ և բանական յոյժ, երկիւղած յԱստուծոյ, և առաքինի 'ի պահս և յաղօթս, հմուտ հին և նոր կտակարանաց Աստուծոյ, քաջախօս և օգնական ամենայն զրկելոց »: Սա ինքն Բարսեղ վարդապետ՝ հայր գոլով խոստովանութեան Պաղնի կոմսին Մարաշոյ և Քեսնոյ, և խրատիչ, — յանլսող լինել նորա և կորնչել 'ի պատերազմի՝ յանխորհուրդ արշաւանին 'ի վերայ Ուռհայոյ (1147), նիզակակցութեամբ Ջոսլինի, — գրեաց ողբերգական բանս 'ի մահ նորին, կամ ճառ դամբանական. յորում խանդաղատանօք յայտ առնէ զգութ և զգորով սրտին 'ի սիրելին իւր Միրի Պաղդին, որպէս կոչէ զնա, մանաւանդ զի անյայտ եղև դիակըն նորա, վասն որոյ և « անգիւտ կորուսեալ » կոչէ. ճարտարապէս նկարագրելով զեռանդուն աշխուժիցն 'ի բանակին և 'ի մարտին. որ և զիւր իսկ զգրողին եռանդըն վառէ. և մարթ է ասել թէ 'ի սրտի անդ իւրում ամբարեցաւ և նա՝ վասն որոյ գրէրն, թէ « տեղի ոչ ուրեք երևեցաւ գերեզմանի նորա. այնքան զօրաց տէր և երևելի իշխան, և այժմ 'ի մեռեալս ոչ յիշատակի, ոչ 'ի կենդանիս երևի, ոչ զանգակ նմա հնչեցոյց ... 'ի կենդանութեան իւրում ոչ հանգեաւ ... և այժմ 'ի կատարածի կենաց իւրոց՝ կորեաւ անյիշատակ »: — Բազում և այլոց հոյակապ արանց հանգստարան եղև Դրազարկ, թագաւորաց, հայրապետաց և վարդապե-*

1 Զպտղոյս զոր յիշեցաք 'ի բնագրութեանս (յէջ 14), Բժշկարանք մեր գրեն սուղ ինչ այլայլութեամբ յիրերաց. հոմանիշ գոլ ղոբոտի. « Ղոբոտին՝ Հայն Ոսկոփ կ'ասէ, և Թուրքն՝ Տօնկուզ էրիկի »: Այլ օրինակ. « Զաքարիայի որդին կ'ասէ, թէ պարսկերէն Պոյլանդ » կ'ասեն, և ինքն Անձկոյն է. Հայն՝ Ուլկումիլ կ'ասէ, և Թուրքն՝ » Տօնկուզ էրիկի. կ' եփեն և պասուխ կու չինեն, Աքակիա կու լինի »: Միւս օրինակ. « Ղարատն՝ որ է Պարանդի »: Միւս ևս, « Աղոյէ, որ է Ղարատին ծառն ... Հայն՝ Ուլկումիլ ասէ »:

2 Զայս յաւելու Պատմիչն Կիրակոս:

3 Որպէս կոչէ զնա ժամանակագիրն Սամուէլ Անեցի:

տաց. որպէս, երեցուն թորոս անուն տերանց աշխարհիս, այսինքն երկուց կոռովի Պարոնայցն Ռուբինեանց, Ա (1127) և Բ (1169), յորոց մին նորոգող իսկ էր տեղւոյն, և միւսն համօրէն տէրութեանն վերանորոգող. իսկ երրորդն՝ տարաբաղդիկ և տարաժամ թագաւորն, թոռն Ա Հեթմոյ, որ յեղբօրէն իւրմէ Սմբատայ՝ թաթարօրէն տանջանօք լարախեղդ լեալ՝ եղաւ աստ ընդ համանուանըն (1298)։ Անդ հանգեաւ և եռանդուն երիտասարդն՝ Լեռնցի Պարոն Ռուբէն Բ, եղբայր Մեծին Լեւոնի (1186)։ Անդ և երկարագոյնն 'ի թագակիրս մեր (զամս քառասուն և հինգ), մեծոգին Հեթում Ա (1270), որ 'ի սողոմոնեան տիս մանկութեան արքայացեալ, « պանծալին » և գեղաղէշն և լին առաքինութեամբ » (տ. յէջ 75), յեցեալ 'ի հանճար և յաննկուն բազուկս հօր իւրոյ Պայլին Կոստանդնի, և եղբօրն՝ Սմբատայ Գունդստապլի, ամբառնայր և հաստատէր 'ի վերայ նրբատաշ հիմանն արկելոյ 'ի Լեւոնէ Մեծէ, որպէս սիւն մի բարձր և պաղպաջուն, երևելի փայլմամբ ընդ արևելս և արևմուտս. յետ բազմարկածեան չքեղաշուք և վերջասուգ կենացն՝ աստանօր տեղի տայր անտեղիտալւոյն. և « 'ի ժամ վախճաննին բարւոք խոստովանութեամբ կրօնաւորեցաւ, և



55. Հեթում Ա թագաւոր, ըստ պատկերաց դրամոցն.

» անուանեցաւ Մակար ». ուր ինննեւտասն ամաւ կանխեալ խաղաղեալ էր զուգակից իւր՝ փառափայլն ամենայն թագուհեաց Սիսուանայ, և ցանկացեալն 'ի թագաւորաց՝ լեռնածին ժառանգն Զապել Ա, († 'ի 22 յունուարի, 1252), « զարդարեալ ամենայն առաքինութեամբ » և բարեգործութեամբք »։ — Անդ 'ի միջի աւագաց և հզօրաց նախնեաց իւրոց՝ զետեղեցաւ և մանկիկն Ստեփանէ, որդի Լեւոնի Բ, վաղ զերծեալ 'ի փորձանաց հընգեցուն եղբարցն՝ բռնաբարողաց թագին. յորոց՝ ածան այսր 'ի հանգիստ և խեղեփքն սիրելիք, նախ առոյգն Ալինախ՝ 'ի յորձանս Կիւդնոսի արփիաստղ զբաւեալ (1317), իւր իսկ արարիկ երիվարին յախուռն տրոփմամբ ոտից, և ապա համածինն Օշին արքայ (1320), յետին մնացորդ տաննեցուն թագակապ և անթագ եղբարց որդւոց Բ Լեւոնի։ Իսկ յեկեղեցական դասուց՝ 'ի սոյն քնարանս Դրազարկու ամփոփեցաւ մեծոգի կաթողիկոսն Պահլաւիկ Գրիգոր Տղայ՝ (25 մայիսի 1193), մեծագունի և նախանձելւոյն ձեռամբ Ն. Լամբրոնեցւոյ, որ և աւանդեաց մեզ զայս յիշատակ. « Անդ հանգուցաք զնա, » աստ, 'ի տապանի, պատուորութեամբ իմ Ներսէսի, » և բարեպաշտ իշխողի մերոյ Լեւոնի »։ Առ նմին եղաւ յետ երկուց ամաց՝ մօրքն և տիօք տղայ կաթողիկոսն Գրիգոր Քարավէժ (1195), հօւպ դամբանի Հեթմոյ արքայի։ Անդ ամփոփեցաւ (1220) լայնատարածն սրտիւ և ձեռօք անուանեալն Մեծարարոյ Յովհաննէս Է կաթողիկոս, որ իշխեաց զդէմ ունել անդիմակալն Լեւոնի, և « բազում ծածուկ և յայտնի հնարից նորա », ըստ պատմչին. և յետոյ հաշտեալ՝ ընկալաւ 'ի նմանէ փոխանակ Հռոմկլայի զԴրազարկս յիւր աթոռ (1218) և կալուած, քանզի յառաջ քան զայն վախճանեալ էր Հեղի-Հեթում, կրօնաւորեալն աստ, և առաջնորդ կարգեալ ուխտին (1200), հաւանօրէն և թաղեալ 'ի սմին. ուր թուի և Բարսեղ եղբայր Հեթմոյ արքայի, առաջնորդ սոյն ուխտի և արքեպիսկոպոս Սսոյ, վախճանեալ յամի 1275 (19 ապրիլի), և բազում գովութեամբք յիշատակեալ։ — Ի դասուէ կաթողիկոսաց աստ հանգուցան՝ և ծերունին Կոստանդին Ա Բարձրբերդցի (1264) և Կոստանդին Գ Լամբրոնեցին (1327). 'Ի թաղելն զսա՝ բացին զհողս Առաջնոյն, « նա գտան զշուրջառն փտած, և զպավլին » խայտնին [1] չէն, և զգաւազանն և զմազն. և ոսկր ամենևին չգտան. և փառք տուին Աստուծոյ՝ որ առնէ զքանչելիս 'ի Սուրբս »։ — Յերամս այլոց եւս խաղաղելոց 'ի հողս Դրազարկու՝ ստարադէմ իմն գտանի անձամբն և գալստեամբ՝ Փատլուն, թոռն այլազգի ամիրայի և իշխողին Անւոյ. որոյ « լուեալ եթէ հան նորա՝ Կատայն՝ 'ի » տանէ Բագրատունի՝ քրիստոնեայ էր, յազգէ թագաւորաց, » խաղայր հօգի իւր 'ի սէրն Քրիստոսի, և երթեալ 'ի լեառն սրբոյն Գրիգորի՝ մկրտեալ կրօնաւորեցաւ անդ զամս հնգետասան, մեծ ճգնութեամբ... » և զկնի գնաց 'ի Դրազարկն, և անդ փոխեցաւ 'ի Քրիստոս [2] », յամի 1130։ — Յոլովք եւս այլք 'ի թագաւորական և 'ի քահանայական դասուց՝ ընդ սոսին և ընդ առաջնորդս ուխտին՝ խաղաղեալ կան 'ի զանխլացեալ հողս և 'ի տապանս Դրազարկու. որով անկ է ճանաչել զսա մի 'ի վեհագոյն և խորհրդագոյն հանգստարանաց աւագորերոյն Հայոց. որոց՝ երանի եթէ ոչ մրգովեցան նըշխարքն նուիրականք՝ 'ի վրիժահան և 'ի պղծագործ մամլուք մատանց։ Թո՛ղ թագուցեալ ծածկեսցին ընդ մոլեկան մացառօք տարրական մայրեաց՝ 'ի խաչադրոշմ խաղաղութեան՝ ցամաքեալքն այնոքիկ վայելչութիւնք հրճուալից տաճարաց և սարաւութից Սիսուանայ. — յորս խայտացին խնդացին զուգափառ ընդ փափուկս և ընդ փարազունս թագաւորութեանց աշխարհի, թեթև թաթիւք և թեթևագոյն սրտիւք գեղապարելով 'ի դիւրահոլով պարունակի կենաց՝ յաւուրս իւրեանց. ոչ անփորձք և անճաշակք վշտաց և արտասուաց, անհրաժեշտ հարկի համօրէն հողածնելոց, ընդ որս և հաւասարեցին 'ի ցածոգի բարձկնեար մահուն. մինչև այց արասցէ զգօն ժամանակ, և միւսանգամ իջցէ ցօղ օրհնութեան

1 Ծաղկաւէնք պայխումին, որ է պապական ուրար կամ եմիփորոն։

2 Այսպէս աւանդէ Վարդան վարդապետ Պատմչ, Գլ. ՀԱ։

'ի ծաղկունսն ծմրեալս. և 'ի չիջելափառ շտեմարանաց անստի մոխրոց՝ ծագեսցէ կայծ կենաց 'ի սիրտս սիրողաց նախահարցն և սաւերացելոց նոցին՝ երբեմն արեգականափայլ՝ փառաց։ — Այլ մեք վերասցուք 'ի մանունակ յաստակաց աստի Դրազարկի՝ յանմահունակն իւր յարկս։

92. Եկեղեցի մեծի ուխտիս՝ նուիրեալ էր Սրբոյ Աստուածածնի, որպէս նշանակի 'ի յիշատակարանի աւետարանի գրելոյ յաւուրս մեծին Լևոնի, յամի 1217, « 'ի » հռչակաւոր և յականաւոր վանս՝ Դրազարկ կոչեցեալ, » ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և բնակարան » փրկչին մերոյ Յիսուսի ». Թերևս գոյր սրբարան կամ խաչ մի սրբեալ յանուն Փրկչին. մատեանն[1] գրեալ է աստարութեամբ Տեառն Գրիգորի՝ վասն « Թորոսի միայնակեցի մականուն Գորգացի կոչեցելոյ. որ և ըստ » բազմամեայ ծերութեան իւրում՝ անկեալ կայր 'ի մահիճս և յարգելանոցի խցկան. և զի թէպէտ և մարմնով » ծերացեալ էր և անցեալ զաւուրբք բազմօք, սակայն » տեսչութեամբ և նախախնամութեամբ մեծին Աստուծոյ՝ արիագոյն և քաջամարտիկ էր 'ի պատուիրանս » սուրբս և յընթերցմունս աստուածային գրոց. վասն » այսորիկ ստացաւ զսա 'ի սփոփանս ծերութեան իւրոյ » և գանձ անկապուտ, կողոպուտ և մարգարիտ անգին » հոգւոյ իւրոյ վչտագնելոյ 'ի յունայնութեանց չար կենցաղոյս այսորիկ. իսկ զկնի ելից կենաց իւրոց յաշխարհէ և փոխելոյ առ Քրիստոս յոյսն ամենեցուն, » ետ զսա մանկահասակ եղբօրորդւոյ իւրոյ Պետրոսի և » բեմական քահանայի, ստացուած նմին սեպհական և » յիշատակ իւր և ծնօղաց իւրոց »։ — Դարու միով ևս յառաջ (1113) գրեալ է աստ աւետարան մի 'ի Գիորգայ գրչէ՝ հրամանաւ մեծի վարդապետին Կիրակոսի կանոնագրի վանացն, որ նոյնպէս յիշէ զՍ. Աստուածածին եկեղեցին։ Միւս ևս աւետարան գրեալ աստ յամի 1182 'ի Թորոսէ և ծաղկեալ 'ի Խաչատրոյ քահանայէ՝ գտանի արդ 'ի Բրիտանեան Թանգարանի 'ի Լոնտոն. գրիչն կամ նկարիչ ճարտար՝ յայտնէ զվաստակ իւր բացագանչութեամբս. « Ո՜վ սուրբ տառ, դու գիտես զաշխատութիւնս իմ և զընդունելութիւնս՝ ընդ որով » եմքս ». և այլուր. « Որ զհամարայքն գիտէ՝ ճանաչէ » զաշխատութիւնս իմ »։ Առաջնորդ ուխտին յայնմ ժամանակի էր Տէր Սամուէլ, որ և եպիսկոպոս Թուի թեմին. տասն ամաւ ևս յառաջ (1173) յիշատակէ զնա նոյն Թորոս գրիչ յայնմ ամի թղթոց Պօղոսի, « յառաջնորդութեան այսր անապատի՝ Տեառն Սամուելի », 'ի խնդրոյ Գրիգորիս և Խաչիկ հարազատաց քահանայից եղբօրորդւոց Գրիգորի Սեբաստիոյ եպիսկոպոսի, որոց հարազատ կոչէ ապա և զԿիպրիանոս։ Յետ Սամուելի Թուի յաջորդ կացեալ և եպիսկոպոս՝ Յովհաննէս, յետոյ կաթողիկոսն. իսկ առ նովաւ՝ առաջնորդ վանացն՝ բազում անգամ յիշեալն և ծանօթ Հեթում-Հեղի եղբայր Ս. Լամբրոնեցւոյն. յետոյ ինքն Յովհաննէս կաթողիկոս սակաւ ամս. ապա Բարսեղ, որ 'ի սկզբան աթոռակալութեանն յամի 1220 գրեալ է աստ զմասն ինչ մարգարէական գրոց[2]. յորում մատենի Արևիկ ոմն մաղթէ յիշել զնոյն « զսրբազան և զգերամաքուր եպիսկոպոս զտէր Բարսեղ », և զԱնձրևէս ոմն, « զի տղայ վախճանեցաւ ». յիշի և Վարդան ոմն։ — Բարսեղ եղբայր Ա. Հեթմոյ՝ որոշակի յիշի յամի 1241՝ յայլ ինչ գիրս, « 'ի » վանս մեծ ուխտի և հռչակաւոր անապատս Դրազարկ » կոչեցեալ... և է առաջնորդ սուրբ ուխտիս մեծն Բասիլիոս՝ եղբայր թագաւորին Հեթմոյ »։ Ի նոյն ամս յիշէ զնա և Վարդան վարդապետ թարգմանիչ Պատմութեան Միխայելի Ասորւոյ։ Գրիչ մատենին յիշեցելոյ (Գանձարան) յամի 1241, Յովհաննէս ոմն, որպէս Թուի 'ի Մեծ Հայոց, ոչ գտեալ աստ անդ ըստ փափագանաց իւրոց՝ բանասիրական և երաժշտական « տեղի սերման, » վասն զի ապառաժուտ էր վայրն. և իմ կանխեալ վերստին գոլով 'ի տեղի իմաստասիրաց և ուսուցմնասիրաց » յերկիր Կիլիկոյ, որոյ Քրիստոս պահապան կանգնի... » և ելեալ 'ի խնդիր օրինակի հռետորական՝ և ոչ գտանելով, և ապա գտեալ աղեկ յոյժ գեղեցիկ՝ զառն միոյ » երաժշտապետի Յուսէփ կոչեալ, և կարի հասու ամենայն իմաստից երաժշտից՝ մինչև 'ի բաւանդակն, որ

56. Մանրուսուցմն գրեալ 'ի Դրազարկ, յամին 1313.

» յաւուրս ոչ գտանի հանգոյն ». մաղթէ յիշել « զԳրիգոր գրագիր որ օժընդակն եղև և գրեաց զքարոզնին... » զՎասիլ փեսայ իմ և զիմ հօրեղբայրքն զԲարսեղն, » զՍտեփանոս և զՄխիթարն և զՆիկօլ, և զիմ հայրիկ » հարազատիկ, և զմօր փոխան իմ », և այլն։ — Յետ Բարսղի արքայեղբօր († 1275) ոչ գտանեմ այլ առաջնորդս, բայց զԿոստանդին Գ կաթողիկոս, որ զի Դրազարկեցի կոչի՝ գուշակի առաջնորդ լինել ուխտին. թերևս առ սովաւ, յամի 1313 Ստեփանոս ոմն գրիչ ընդօրինակէր զՄանրուսումն երգարան « 'ի սուրբ և հռչակաւոր անապատս Դրազարկ, ընդ հովանեաւ մօրս » լուսոյ սուրբ Աստուածածնիս և այլ Սրբոցս՝ որք աստ. » 'ի խնդրոյ պատուական և կուսակրօն քահանայի Յոհանիսի ». որոյ քեռի էր « պատուելի ծերունի քահանայ Ստեփանոս ». կազմող գրոցն՝ Յակոբ երէց որդի

[1] Զգաստական մատեանս զայս՝ ընդ այլոց յոլովից՝ կոստրեցին Տփղիսեցիք, զշարեալս երբեմն ընդ տեառն նոցին և քաղաքագլխոյ իւրեանց՝ Շիրմազանեան Գալուստ բանասիրի։

[2] Ինքն իսկ գրէ զանձնէ 'ի նմին թուի (ՈԿԹ, 1220). « Ես յետնեալս 'ի մարդկանէ և արուապս յամենեցունց Բարսեղ պիտակ սուտ » եպիսկոպոս.... գրեցի զմատեանս աստուածաշունչ՝ 'ի թագաւորութեան հայասէրիս ՈԿԹ, 'ի հայրապետութեան Տեառն Յովհաննիսի, և յիշխանութեան Հայոց իշխանացն. յորում ամի մեռաւ » թագաւորն Հայոց Լևոն. ընդ հովանեաւ Ածածնուն Դրազարկ կոչեցեալ »...։

Մեծ Պարոնին, եղբարքն Յովհաննէս և Կոստանդին։ Սակաւ ամօք զկնի (1316) գտանի գրեալ անդ Յայսմաւուրք ձեռամբ վահանայ, և յամի 1330 պարգևեալ 'ի Դ Լևոնէ եկեղեցւոյն Քարաքոյ ('ի ծովակողմանս Ասորւոց երկրի)։ — Ի սկիզբն ԺԴ դարու (1301) յիշի Յովհաննէս եպիսկոպոս Սսոյ, որոյ 'ի դէպ է լինել և առաջնորդ ուխտին նախ քան զԿոստանդին. իսկ սա յամին 1321 ստորագրէ 'ի հրովարտակի Լևոնի Դ առ Վենետկեցիս, ոչ միայն արքեպիսկոպոս Դրազարկի, այլ և Քարտուղար Թագաւորութեան Հայոց[1] : — Վերջին ծանօթ ինձ յիշատակ և նշխար 'ի Դրազարկէ, զոր և 'ի ձեռին ունիմք, է գեղեցկագիր և գեղանկար աւետարան մի' գրեալ յամի 1331, «յերկնահանգէտ անապատս » Դրազարկ, 'ի լաւ օրինակէ, ձեռամբ Յիսուսի », 'ի ձեռն Թորոսի Հռոմկլայեցւոյ, վասն Սարգսի քահանայի որդւոյ Մարտիրոսի և Մամա տիկնոջ. կազմեալ 'ի Գրիգորէ, որոյ գրեալ է և զՀամաբարբառսն և զնախադրութիւնս յամի 1332. Սարգիս 'ի տղայութենէն անտ ուխտեալ ընծայել Ս. Աստուածածնի զգիրս զայս, և յաւելու, « Ձեզ աղաչեմ, սուրբ ուխտիս առաջնորդք, Թեալ » սուրբ աւետարանս յեկեղեցիդ, մինչև 'ի սպառուած » ժամանակի ... կացցէ սա 'ի սուրբ նշխարհքն մինչև 'ի » կատարած, բարեխօս մեզ[2] » : — Յետ այսորիկ 'ի կարգ եպիսկոպոսաց Սսոյ յաւելու Բարսեղ յամի 1342, որ գտաւ 'ի ժողովի Մխիթարայ կաթողիկոսի։ Յետին եպիսկոպոս Յովհաննէս յամի 1372, յիշատակի 'ի Թուղթի Գրիգորի ԺԱ Պապի առ Փիլիպպոս իշխան Տարենտայ, իբրև դեսպան առաքեալ 'ի դշխոյէն Հայոց[3]։ — Ըստ նախագրելոցս լինին ծանօթ առաջնորդք Դրազարկու և արքեպիսկոպոսք Սսոյ միանգամայն,

| | |
|---|---|
| † 1113 | Գէորգ Մեղրիկ. |
| 1113-1127 | Կիրակոս Գիտնական վարդ. |
| 1173-1182 | Սամուէլ. |
| 1198 | Յովհաննէս Մեծաբարոյն. |
| 1200 | Հեղի-Հեթում Լամբրունեցի. |
| 1218 | Յովհաննէս վերստին (կաթողիկոսն). |
| 1220 | Բարսեղ. |
| 1241-1275 | Բարսեղ արքայեղբայր. |
| | . . . . . . . . |
| 1301 | Յովհաննէս. |
| 1323 | Կոստանդին (Գ կաթողիկոս). |
| 1341 | Բարսեղ. |
| | . . . . . . . . |
| 1372 | Յովհաննէս. |

Զատ յարքեպիսկոպոսէն էր աներկբայ և վանահայր կամ առաջնորդ ուխտին, որպէս յիշի յամի 1325 գովութեամբ' Հայրապետ « չնորհաներկ քահանայն և ամենիմաստ առաջնորդ անապատին » . ընդ նմին և « եղբայր նորին կուսակրօն քահանայն Սուքիաս », որոց յորդորանօք' գրէ Գրիգոր որդի Միխայլի միայնակեցի և քեռորդի Սարգսի քահանայի' աւետարան մի. և աստուածասէր այրն Գրիգոր որ պատրաստէ և տայ 'ի նիւթ գրոցն' քան տետր մագաղաթ, զթերին լնու Մխիթար երէց. ձեռնտու լինի և Պօղոս հովիւ' հայր Գորգայն և Գրիգորին, տալով երեքհարիւր դրամ. որպէս և կուսակրօնն Մարաշցի քահանայ' հարիւր դրամ. իսկ Սարգիս քահանայ որդի Գրիգորի քահանայի և Հեղինեայ և եղբայր Թէֆանոյ' ոսկէ և ծաղկէ զգիրսն' բազում աշխատանօք։ Նշանաւոր բան 'ի յիշատակարանի գրոցս այս է, զի յետ 'ի սկզբանն ասելոյ գրեալ զայն « 'ի հռչակաւոր անապատս Դրազարկ, ընդ հովանեաւ Ս. » Աստուածածնիս և այլոց Սրբոց' որ աստ », ապա երիցս մաղթէ յիշել զմիաբանս և զապաստաւորս' զհանգուցեալսն և զկենդանիս' փոսոյ սանապատին. զոր և նոյն լինել ընդ Դրազարկի յայտնէ' կրկին աղաչելով յիշել « զհեզահոգի » հայրս սրբոյ աստուածաբնակ ուխտիս փոսոյ' զՀայրապետ' հանդերձ եղբարբն իւրով և այլովք վերագրեցելովք, և զամենայն բնակիչք սուրբ ուխտիս փոսոյ, զքահանայսն և զկրօնաւորսն » ։ Արդ յայտ է թէ կամ ամենևին նոյն և երկանուն էր հռչակաւոր մենաստանս, և վասն զրիցն այսպէս ևս կոչեցեալ, կամ երկմասնեայ, որպէս և յայլ մեծամեծ վանորայս էին զատուցեալ կայանք միաբանակեցացն յառանձնակեցաց, այսինքն վանք և անապատ։ Յիշի և յայլում գրոց յիշատակարանի[4] փոսոյ վանքս, և 'ի նմին միաբանք ոմանք, այլ զի զանխուլ է յինէն յիշատակարանն և թուականն' ոչ ունիմ այլ ինչ յաւելուլ։ — Բայց է և այլ անուն կամ մակդիր' անկաւոր այսքանոյ նշանաւոր մենաստանի, այն է Աւագ վանք. որպէս աներկբայ աւանդէ Թորոս գրիչ անդ' յամի 1173, յիշելով զառաջնորդն Սամուէլ և ասելով. « Ի սրբազան ուխտս Դրազարկի, որ կոչի Աւագ վանք »։

Յայլոց պաշտօնէից վանացս Դրազարկու' յիշատակի 'ի հեռաւոր Դիւանս Անգղիոյ, Երաժիշտ կամ Դպրապետ տեղւոյն Թորոս, զոր ընդ Պաղտինի (մարաջախտի' հօր Բ Կոստանդնի Թագաւորի) դեսպան առաքեալ էին Լևոն Գ և խնամակալ նորին Հեթում Բ' յամի 1307, զատ յայլոց' և առ Եդուարդ Բ Թագաւոր Անգղիոյ. որ' մինչչև լուեալ զգոյժ մահու նոցա' յետ ամսոյ գրէր առ նոսա յ'8 մարտի 1308 ամի, զընդունելութիւն թղթոյ նոցին և զդեսպանացն. Litteras vestras de credentia, per discretos viros, *Theodorum Cantorem Abbatiæ*

1 Par la main dou Reverent pere en Christ Der Constantin, par la grace de Dieu Arcevesque de Trasarc, aujordhui Canceller dou Royaume d' Ermenie. — *Charte de Léon IV.*

2 Վայելուչ բանիւք կարգեալ է և սկիզբն յիշատակարանին, յետ փառաբանութեանն. « Որք Աստուծոյ սիրոյն հրով վառին, միշտ յԱս- » տուած խոկան և յաստուածային իրողութիւնս փութան, բանիւ և » իրօք. բանիւ' 'ի գուանելն և յաղօթելն. և իրօք' 'ի վաստակ գոր- » ծոյ անձանձրոյթ. նա և սիրեն արձան և յիշատակ բարի' 'ի փառս » Աստուծոյ կանգնել, և այն սիրով։ Որպէս երանելի քահանայս » Սարգիս' բոցով սիրոյն Աստուծոյ կենդանախարուկեալ, ստացաւ » զսուրբ Աւետարանս, անձին 'ի վայելս, և յապագայն յիշատակ » իւր և որոց ծնեալ զնա ... և ուղղութեամբ ածուցին և Աստուծոյ ա- » ւանդեցին ...։ Աղաչեմ և ես մեղաւորս Թորոս Հռոմկլայեցի' շա- » րահիւսող սորին, արժանի զանարժանս առնել և յիշել յաղօթս » զի մեծ յուսով ակն ունիմ խնամոցն Աստուծոյ, և այն' աղօթիցն » ձեր միջնորդելովն »։

3 ... Venerabilem fratrem Joannem Archiepiscopum Sitiensem, præfatæ Reginæ (Armeniæ Mariæ) nuncium, latorem præsentium (literarum), audivimus, et audiri fecimus diligenter, etc. — Epist. Greg. XI. — *Avinione, 22 Jann., 1372.*

4 Մատեանս է բոլորգիր ճառընտիր, թիւ 258 Ձեռագրաց Էջմիածնի, ըստ ցանկի միոյ։

*de Tresarco*, Dominum Baudivinum filium domini de Negrino consobrinum vestrum, et Dominum Leonem, milites familiares vestros et nuncios speciales... recepimus [1]. *Թորոս՝ Նախադասեալ իշխանական և աստեղատական դեսպանակցացն, յայտ լինի ճարտար, հմուտ և քաղաքագէտ ոք լինել, և համարձակ յարքունի դրան, և կարծեմ թէ նոյն ինքն է* Թորոսն Թափրոնց, *աւագերէց այնր Դրան, որոյ և վախճան նշանակի յարքունի Յայսմաւուրս, 'ի 27 ամսեան դեկտեմբերի 1342 ամի. « Յայսմ աւուր հանգեաւ 'ի Քրիստոս իմաստունն և հանճարեղ Երաժիշտն Թորոս աւագերէցն Թափրոնց. 'ի » Թվ. Չղա. 'ի դեկտ. իէ. որոյ ողորմեսցի Նմա Տէր Յիսուս Քրիստոս » ։*

*Արժանի յիշատակի և ծանօթութեան է և վերոյիշեալ ոսկողն և ծաղկող, այն է Նկարիչ՝ աւետարանին գրելոյ յամի 1325, և Նախայիշելոյն ևս աւետարանի գրելոյ յամի 1331, որ առ մեզս է, անթերի ամենայն մասամբ և պէսպէս գունագեղ զարդուք,* Սարգիս *քահանայ կամ աբեղայ, որդին Գրիգորի քահանայի և Հեղինեայ. որոյ ճարտարութեան մատանց և կերպարանի դիմաց ցուցակ լիցի պատկերս այս՝ ճշգրիտ գաղափարեալ յաւետարանէն (1331 ամի). յորում Նշանաւոր է և խաչանիշ*

**57.** *Աւետարան գրեալ 'ի Դրազարկ, յամի 1331.*

*դրօշ աշտարակի տաճարաձև շինուածոյն կամ բերդին. յաւելլաք յեզերս պատկերի աւետարանչին և զոմանս 'ի զարդուց նոյն գրոց, որ 'ի լուսանցս իջիցն ։* Ի *ստորև պատկերի Ս. Ղուկայ գրէ Նկարիչն՝ հակիրճ. « ԶՍարգիս անարժան քահանայ զծաղկող սուրբ աւէ. և զծն. յիշէ » ։ Երկարագոյն և չափաւ ոսկէգրէ շուրջ զՄատթէի պատկերաւն.*

« *Սուրբըդ սրբոց անհասական*
*Որ ծաղկեցար յազգըս մարդկան,*
*Եւ ըզշնորհըս քո շրթան*
*Հեղեր օրհնաալըդ յաւիտեան.*
*Ես ըստ իմում տըկարութեան*
*Զքոյս ընծայեմ քեզ զեփհական* [2]*։*
*Ընկալ ըզսա Տէր զըթութեան,*
*Եւ յիս Նայեա ողորմութեան.*
*Եւ ըզծաղկողըս անպիտան*
*Ցաղօթըս ձեր առնէք արժան*
*Հանուր սեռիք և ծնընդեան* » ։

*Յաջողութեան Սարգսի յարուեստի Նկարչութեան և ոսկելոյ՝ ցոյցք են և այլ ևս մատեանք, զերծեալք յայնքան հինից և Հնարից կորստեան, որպիսի են (ծանօթքն ինձ) այլ աւետարան գրեալ յամի 1334, 'ի Նոյն Գրիգոր գրչէ առաջնոյ աւետարանին (որ յամի 1325), յորում Նոյնպէս կոչէ զինքն « Սարգիս սուտանուն քհ... ծաղկող սուրբ տառիս և ոսկող » . — Ասիզքն Անտիոքայ և Դատաստանագիրք Սմբատայ Գունդստապլի, գրեալ և ոսկեալ 'ի սոյն Սարգսէ, յամի 1331, հրամանաւ Դ Լևոնի, զորոյ և զպատկեր Նկարեալ է 'ի Նմին. — Աստուածաշունչ գիրք գրեալ յամի 1319, 'ի ճարտար գրչէ, և ճակատն ոսկէզարդեալ 'ի ձեռյս Սարգսէ. որոյ ճար-*

[1] RYMER. Fœdera, I. IV, 110.

[2] *Այսպէս յօրինակին, փոխանակ գրելոյ սեփական ։*

տարութեան և համբաւոյ վկայէ 'ի սմին ժամանակի (1320) և եպիսկոպոսն Սեբաստիոյ Ստեփանոս, եկեալ յողջոյն Թագաւորին Օշնի, և ընկալեալ 'ի նմանէ՝ ըստ խնդրոյ իւրոյ 'ի պարգև՝ Աւետարան մի, թերակատար գործ « արագ և գեղեցկագիր գրչի, և բազմերանգ ծաղկօք զարդարեալ յոգնահանճար նկարակերտի, այլ ոչ » յաւարտ հասուցեալ ... (վասն որոյ, ասէ ստացողն,) » ելեալ 'ի խնդիր քաջ նկարագրի, և գտի զքրասէր » քահանայ զՍարգիս՝ մականուն Պիծակ, յոյժ հմուտ » նկարագրութեան. և տուեալ իմ 'ի հալալ արդեանց իմոց 1300 դրամ, և նա յանձն էառ, և բազում աշխատութեամբ կատարեաց, և ելից զպակասութիւն ոսկենկար պատկերացն որ 'ի սմա. զոր ընկալա յԱւտուծոյ և զուարճացայ ներքին մարդովն »: Շնորհ ունելի է եպիսկոպոսիդ՝ որ յայտնեաց մեզ զմականուն Սարգսի. զոր ինքն ոչ գրէր 'ի ծանօթ մեզ յիշատակարանս գրոց, և ոչ յամենեսին նոյնպէս նշանակէ զքահանայութիւն իւր և զծնողսն. այլ յարակից բանքն և թուականք, և մանաւանդ նմանութիւն նկարուցն և որ 'ի նոսին կերպարանաց, հաւաստեն զնոյնութիւն հեղինակին. որ՝ և ըստ բանից գրչի երկոցուն այսց աւետարանաց՝ քեռի է նորուն, այսպիսի ազգականութեամբ.




Զծնօղսն և զքոյրն վախճանեալս ծանուցանէ Սարգիս՝ յառաջ քան զգրչութիւն աւետարանին յամի 1325. յորում՝ ասէ, « յոյժ աշխատեցայ 'ի յոսկեն և 'ի ծաղկելն՝ 'ի համարաբքաւսն, 'ի յաւետարանչերն և 'ի « խորնին (խորանսն), նաև 'ի գլխագրելն, զի յոյժ բազում է » :

Ցայս վայր համառօտեալ յիշատակարանքդ՝ ցուցին մեզ զԴրազարկ չէն և բարգաւաճ գրեաթէ 'ի սկզբանէ ԺԲ դարու ցկէս ԺԴին. և այսու իսկ երկարութեամբ ժամանակի, որպէս և հնութեամբն, գուշակի առաւելութիւն նորին քան զյոգունց կամ զընաւից վանորէից Սիսուանայ. մարթ է իմաստասիրել և զյոլովութիւն բանաւոր արգասեաց և զմատենից գրելոց 'ի նմին ուխտի և անապատի, իբրև զտերևս հողմակոծ աշնայնի վայրավատին ցրուելոց և կորուսելոց, և հազիւ սակաւուց զերծելոց յանքոյթ խորշս ուրեք. յորոց նշխարիկք ինչ համարեցին և նմանաձև տպագրեալքս առ 'ի մէնջ յիշատակարանք (Թիւք 56 և 57):

## ԱՆԱԶԱՐԲԱ

93. Ցընդարձակ դաշտավայրի երկուստեք ափանց Ջահանայ ծաւալի ամայացեալ գաւառն Անազարբայ, 'ի հարաւոյ և յելից վիճակին Սսոյ, 'ի հիւսիսոյ Մսիսայ, անջրպետ ընդ սա ունելով զԱրա գետ, և յարևմտից Թիլ–Համտընոյ. ընդ սա իջեալ գետն մեծ՝ երկու փարսախաւ 'ի ստորև աւերակաց Անազարբայ, ընդունի զխառնուրդս երկուց գետոցն՝ Սաւրանի և Սոյն, յորոց անկեան կըցուածոյն կանգնեալ է քաղաքն: Եւ ոչ միայն զերիս զայսոսիկ գետս ունի գաւառն՝ յարբուցումն, այլ և ճահիճս ընդարձակս՝ վնասիչս օդոյ և բնակութեան. բայց երկիրն ըստ հասարակ դաշտագետնոյն Կիլիկիոյ՝ կարի բարեբեր է. Թէպէտ և առանձինն ինչ գրնութենէ կամ զբերոցն ոչ գտանեմ աւանդեալ, զատ 'ի նշանակելոցս 'ի բնագրութեանն. այսինքն յիշեալն անդստին 'ի ժամանակէ պայազատութեան մերայոց՝ ճշուրակի գեղջ « ծովիկ » փոքր, յորում ծովակ եթէ ձի կամ այլ անասուն մտանէ 'ի ջուրն՝ նոյնժամայն նաև ազին ընդ ամենայն մազին կորզին. կճղակն կորզեալ անկանի. բայց եթէ ըմպեն 'ի ջրոյն յայն անասունք՝ ոչ վնասին և կամ լերկին »: Որքան ստոյգ իցէ այս՝ ոչ ունիմ ասել. բայց զոնեա հաւաստէ՝ զի և յայնժամ ('ի ԺԴ դարու) երևէին ծովակք 'ի սահմանս յայսոսիկ, որք առաւել ևս ընդարձակեցան յանխնամութենէ մարդկան՝ նուազելոց յերեսաց ասպատակաց և 'ի ճարակելոյ վրանաշուաց. յաւելան 'ի յետին ժամանակս և Եգերացիք (Չէրքէզք) 'ի Թուրքմանսն Թափառողս յերեսս երկրին. այն որ 'ի միջին դարս հռչակեալ էր իբրև զմի 'ի քաջաբերագոյն վիճակաց երկրի, և ըստ Էտրիսի աշխարհագրի Արաբաց (յ'ԺԲ դարու), նման էր դրախտանմանն Դամասկոսի:

Ի լայնածաւալ ամայութեան անդ՝ 'ի գետամէջս նախասացեալ օժանդակաց Ջահանայ, ամայագոյն ևս լըքեալ դնի մի յանզաւակացեալ քաղաքամարց երկրի, երբեմն գլուխ չինից և գաւառաց, և երկրորդ իշխանափառ՝ բովանդակ աշխարհին Կիլիկիոյ. մարթ է ասել թէ և մի 'ի մեծաց թատերաց աշխարհի և խառնիճաղանճի մարդկութեան՝ 'ի սպառ լռեցելոց, ըստ ափշեցուցիչ օրինաց ժամանակի և բաղդից: Քարաբլուր մի երկայնանիստ՝ փարսախաւ չափ 'ի հիւսիսոյ ընդ հարաւ ձգեալ 'ի գետակիցսն՝ 2 կամ 300 Ձ. բարձր, ուրեք անձուկ յոյժ, մինչև հազիւ 15 Ձ. լայնութեան ունել կողմանէ 'ի կողմն, կրէ յերկճիղ գագաթան զմի յամրագոյն բերդից Կիլիկիոյ, յորոյ 'ի ստորև յարևմտակողմն՝ դնին աւերակք քաղաքին՝ քառակուսի պարսպօք. զորոց զդիրս՝ զշինին և զբերդին՝ Դեսիէ համանման գտանէ Տոպեանն Վանայ, և գրեաթէ նորին Շամիրամայ շինուածի գործ, կամ այլոյ ուրուք արևելեան հիմնադրի՝ ըստ անուանն. զոր սովորաբար 'ի սեմական կամ յարաբացի

լեզուէ տաճկաբանն Այն-զարպա عين زربه, զեղջն ակն (աղբիւր). իսկ արեւմտեայք կամ Յոյնք կամին յառաջագոյն խորհրդոց որոնել զնոյն. սակայն ոչ գտանի անունն Անազարբա Ἀνάζαρβας կամ Ἀνάζαρβος առ հին մատենագիրս նոցին, թէ և քաղաքն կայր¹, և ըստ ոմանց Կիւնտա Κύνδα անուանէր զառաջինն: Օգոստոս կայսր մեծարեալ 'ի քաղաքացեացն՝ կոչեաց զայն յիւր անուն՝ Կեսարէա, և յորջումն յայլոց համանուանց՝ ասացաւ Կեսարիա Անազարբեան, Cæsarea ad Anazarbum. Այլ կոչեալ և Դիոկեսարիա, այլ անխտրաբար միայն հին անունն. որ յաճախ առիրութեամբ և առ մերային Անարզաբա կամ Անաւարզա գրի և կոչի, այլ յուզիւղն յոնականն և արաբականն՝ յետագայսն ը ստա, Անազարբա, որպէս գրեցաք և մեք, և ոչ Անարզաբա: Նորայլոյր իմն անուն լսեցուցանէ մեզ Մատթէոս Ուռհայեցի, և չգիտեմ յիմէ առեալ, «Տրովաղա, որ է Անաւարզա» ասելով:

Քաղաքս այս անծանօթ 'ի վաղեմի պատմութեան



58. Անազարբա քաղաք.

պայծառացաւ 'ի սկզբան բիւզանդականութեան Հռովմէակաց. որոց գաւառաց իշխան նստէր աստ, և նորին հրամանաւ յուսերս հալածանաց՝ նահատակեցան 'ի սմին տեղւոջ Վկայքն Տարագոսեանք,

Նախ 'ի Տարսոն չարչարեալք,
Եւ 'ի Մամեստիա տանջեալք,
ՅԱնարզաբայ կատարեալք,
Ըստ հրամանաց երից բռնաւորեալք ».

իբրու զի մին մանկահասակ էր, միւսն ծեր, և երրորդն այր չափահաս, ըստ ասացուածի մերոյ և երգոցի Շարականին: — Դժնդակ իմն բաղդի սահմանեալ թուի քաղաքս. զի չորից տապալեցաւ 'ի սասանութենէ երկրի, և թերեւս 'ի միւս եւս յետին նուազէ այնպիսի պատահարի՝ իսպառ անկանգնելի մնայ: Զառաջինն յետ կէս Բ դարու կործանեալ՝ և վերականգնեալ 'ի Ներուայ կայսերէ. երկրորդ անգամ առ Յուստինիանոսի կայսերբ յամի 525, և նորոգեալ՝ յանուն նորա կոչեցաւ Յուստինիանուպօլիս. որպէս և յետ սակաւուց նոյնպէս արար Յուստինոս և յիւր անուն կոչեաց Յուստինուպօլիս: — Անուանի եղև յառաջին դարս իբրև հայրենիք Դիոսկորիդեայ մեծի բժշկի, որոյ ժամանակ կենաց ոչ է հաստատեալ. յԲ կամ Ա դարու՝ Ոպպիանոսի քերդողի և երգչի Որսորդութեան: Ի սկզբանէ Գ. դարու կոչի մայրաքաղաք,

¹ Ըստ Սուիդասայ. 'Ի հին և բնիկ դրամս՝ որպէս 'ի պղնձեայս յայս փոքրիկ՝ անուն ԱՆԱԶԱՐԲԱԵՒՈՑ գրեալ ANAZARBEΩN. իսկ պատկերն յաջակողմն՝ նշանակէ զվիմաւոր լեառն, առ որով կառուցեալ է քաղաքն: Այս դրամ հատեալ է 'ի 180 թուականին Յունաց կամ Աղեքսանդրի, նշանակեալ ΡΠ տառիւք 'ի ներքոյ երիվարին յարշաւ, որպէս երևին 'ի հակադրեալ դրամին.



որպէս և յայսմ պղնձեայ դրամի հատեալ առ Վաղերիանոս կայսերաւ (253-260). առ Թէոդոսիւ փոքու (յա-




59. Դրամ Անազարբայ առ Վաղերիանոս կայսերբ.

մի 444) հաստատեցաւ գլուխ քաղաքաց Բ Կիլիկիոյ[1]. որպէս և մերս աշխարհագիր (Խորենացի) գրէ. « Ա և Բ Կիլիկայք են... որոց մայրաքաղաքք են Տարսոն և Անարզաբա, ընդ որովք աշխարհք բազումք և բերդք». այսպէս և անագան Լամբրոնեցին յիւր ժամանակին ասէր, « Անարզաբա և Սիս, և որ ընդ նոքօք աշխարհք». յայտ առնելով զի յոյնքան դարս եկաց նա բարգաւաճ և 'ի պատուի. և որքան բնութիւն տապալէր՝ այնքան ճարտարութիւն և պէտք մարդկան ստէպ կանգնէին և նորոգէին. բայց և յայն սակս նշաւակ կայր յափշտակութեան աշխարհակալաց և ընչասիրաց. և քան զյոգունս 'ի քաղաքաց ստէպ բռնաբարեալ լինէր յԱրաբաց և 'ի Հոռոմոց. որպէս յիշէ բազում անգամ և մերս պատմիչ Մատթ. Ուռհայեցի: Ըստ արաբացի պատմչաց՝ Նախ Հարուն-էլ-Ռէշիտ էառ զԱնաւարզա յելս Ը դարու, և բնակեցոյց 'ի նմա գաղթականս 'ի Պարսից և 'ի Հնդկաց. յետոյ Մութավաքէմ ամիրապետ յառաջին կէս Թ դարու. յետ նորա կրկին նուաճեաց Մութէվաքքիլ յամի 860. յորմէ թափեաց Վասիլ Ա կայսր յամի 880, հալածելով զզօրավարն Արդլլա, և քակելով զամուրս ինչ կողմանցն. որոց անուանք թէ և իցեն աղաւաղեալք, յիշեսցին առ մի նուագ, զուցէ յանակնկալեաց ծագեսցէ զոյզն ինչ լոյս. և են Կայիսոս (Καίσους), Կատասամաս (Κατασάμας) կամ Կասամանն (Κασάμαν), Կարբանն (Καρβάν), Արդալա (Αρταλα) կամ Արդաբաս, Հոռբամ (Ροβάμ), Ենդելեխոնն (Ενδελεχόνης) կամ Երեմոսիւկէ (Ερημοσυκέα): — Ի կէս Ժ դարու ձեռն արկեալ էին 'ի վերայ կողմանցս՝ ամիրապետք Եգիպտոսի, յորոց էառ Սարակինն, ասէ Ուռհայեցին, և յիշէ յետ ամաց (962) զՆիկեփոր կայսեր նուաճելն ընդ այլոց քաղաքաց « և զականաւորն զԱնաւարզա, և » աճազին և սաստիկ կոտորած էած 'ի վերայ ազգին » Տաճկաց, մինչև 'ի դուռն Անտիոքայ քաղաքի». յայսմ նուագի ասեն Յոյնք նուաճեալ նորա յիսունևհինգ բերդս, և յետ ամաց (965) այլ ևս քսան: Այսուհետև Զմըշկիկն և Բ Վասիլ յապահովեցին առ ժամանակ մի զմեծ քաղաքս զայս և զվիճակսն. բայց առ Թէոդորա դշխոյիւ (1054-58) դարձեալ անկաւ 'ի ձեռս այլազգեացն՝ բազում կոտորածիւ և գերութեամբ. և թէպէտ միւսանգամ տիրեցին Յոյնք, այլ հասեալ էր ժամանակ կերպարանափոխութեան պետութեանց, յելս կոյս ԺԱ դարու, դիմեցմամբ Խաչակրաց 'ի Կիլիկիայս. զորոց և զումարտակս՝ ասէ Ուռհայեցին անցեալ ընդ Անաւարզա՝ յԱնտիոք. բայց գոգչիր 'ի նմին ժամանակի 'ի սկիզբն ԺԲ դարու, մայրն այն քաղաքաց մեծ և պանծալի՝ ոստան եղև դեռաբոյս հարստութեան Ռուբինեանց, Թորոսի Ա բարեպաշտի թափելով զայն 'ի Յունաց՝ յառաջին ամս տէրութեան իւրոյ. ուր և երբեմն ընդ աւարին բարձելոյ 'ի բերդէն Մանտալեանց՝ զպատուական « Պատկեր Տիրամօրն, եդ » 'ի դղեակն Անարզաբայ, զոր իւր առեալ էր 'ի Յունաց. » յորում և շինեաց զհռչակաւոր տաճարն՝ և եդ անդ » զպատկերն, որպէս և գրեալ է յարձանի 'ի շինուածս » տաճարին». զայս յեղյեղէ և Վահրամ 'ի Վիպասանութեանն, յաւելլով զանուն եկեղեցւոյն.

« ԶԱնարզաբա ինքըն գրաւեալ,
Յորում զտաճարըն մեծ շինեալ,
Զօրավարաց անուամբ պատուեալ.
Անդր ըզՊատկեր Կուսին եդեալ,
Որպէս յարձանսըն փորագրեալ »:

Յայս ժամանեալ կարևոր յիշատակ՝ արժան է զկայ առնուլ և քննել զԴղեակն և զԵկեղեցին, զորոց զրուցեն



60. Եկեղեցի Անազարբայ.

մերքս, և երկոքին ևս դաստակերտք են Թորոսի Ա, արդարև բազդաւորի. զի սա նախ էառ 'ի Յունաց և մեծարեցաւ 'ի նոցանէ՝ Պռոտոսեբաստոս պատուանուամբ. իսկ որդի և ժառանգ իւր Պր. Լևոն՝ յամենայնէ կալաւ 'ի նոցուն: Դղեակն կամ բերդն որ կայ 'ի բարձու քարայրին՝ յելից հարաւոյ քաղաքին, յայտ է թէ վաղուց կառուցեալ էր, և ըստ Ստրաբոնի և Պղուտարքեայ՝ 'ի դէպ է զայն համարել Կուինդա՝ գանձատուն Մակեդոնացւոց. նորոգեալ անշուշտ 'ի ժամանակի հակառակամարտութեան Արաբկաց՝ վերանորոգեցաւ 'ի Թորոսէ և 'ի Լևոնէ, և մինչև ցաւարտել շինուածոց Սսոյ՝ նա եղև առաջին ամրութեանց և պահապան երկրի նոցին պայազատաց: Ի բնէ անմատոյց յերից կողմանց՝ դժուարելանելի է և 'ի չորրորդէն՝ որ բարձր է իբր 700', ընդ ափափայս. կրկին պատուարօք պատեալ է բերդն, քան զբազումս 'ի բերդօրէից աշխարհին չէն և կանգուն մնալով և բարձրագոյն ունելով պարիսպս և աշտարակս. յորոց արևմտակողմեանքն կիսաբոլորք և կռմբաձև (à bossages) տաշածոյ

[1] Κιλικίαν δευτέραν ἀπομερέσας ἀπὸ πρώτης ἐποισεν ἐπαρχίαν, δοὺς δίκαιον μητροπόλειος Ἀναζάρβῳ τῇ πόλει. — Malala.

քարամբք, ըստ Լանկլուայի՝ բիւզանդացի կերտուածք են, արեւելակողմն՝ հայկական. ըստ անկանոն ձեւոյ գագաթան քարալերինն՝ ձեւեալ է և բերդն։ Յառաջնում պատուարին է կիսաւեր եկեղեցին Զօրավարաց՝ դաստակերտ Թորոսի Ա, եռամանեալ չորիւք սաուար քառակուսի սեամբք, (յորոց մին անկեալ է), և տակաւին բառնան զմասն ինչ ձեղուանն. 'ի ներքին որմունսն երեւին պատկերք նկարէնք՝ բազում մասամբ աներծք. 'ի կամարի միոյ յերեցուն կողմնական դրանցն՝ գրեալ է յունարէն ΕΥΛΟΓΕΟϹ, (Օրհնութիւն). ընդ քուօքն՝ շուրջ զբոլանդակ եկեղեցեաւն պատի մեծատառ արձանագիր Թորոսի, աւա՜ղ, զի խանգարեալ կամ ոչ քաջ ճշգրտեալ. 'ի հարաւակողմանն նշմարին բանքս.

**Ի կամս ամենասուրբ Երրորդութեան ես Թէոթոս... Սեբաստոս. որդի Կոստ... որդւոյ Ռուբենի շինեցի զեկեղեցիս . . . . . . . . . . . .**

յարեւելակողմն, թերեւս կցեալ ընդ վերնոյն վասն բառիս,

**փրկութեան հոգւոյ իմոյ եւ յիշատակ ծնողաց իմոց եւ ի կեն (դա) նութիւն . . . (բարի) խաւսութեամբ . . .**

հիւսիսակողման գրուածն գրեաթէ իսպառ խանգարեալ է. յարեւմտակողմն վերծանի,

**Յիշեսջիք զԹէոդոս, որդի իմ զԿոստանդին ի սուրբ յարժանաւոր յաղաւթս ձեր ի Քս Յս ի Տր մեր. 'ի Թվին . . .**

Յատակ եկեղեցւոյն խորխոլեալ գոգացեալ է. ընդ նովաւ կարծէ Լանկլուա թաղեալ զառաջին պայազատս Ռուբինեանց, այսպէս իմաստասիրելով յարձանագրէն, յորմէ ոչ ստուգի կարծիսն։ Մեծագունի եւս եկեղեցւոյ աւերակ կայ 'ի կէս ճանապարհի քարափանն՝ որ 'ի քաղաքէն հանէ 'ի բերդն, և 'ի նմին իսկ քարաժեռի փորեալ է ստորին կողմն, իսկ վերինն մեծամեծ հատորաք վիմաց. երիս կիսաբոլոր պատուհանս ունի և սիւնս յոնիացիս. 'ի բուռն սասանութենէ երկրի ոչ սակաւ 'ի բաց ստուցեալ են քարինքն[1]։ Ի նմին քարաժայռի հատեալ են ուղի ելանելոյ 'ի բերդն, և երկուստեք դամբանք։ Յարեւելեան ծայր պատուարին՝ քարաժայռն ճեղքեալ է արուեստիւ հզօր ձեռին Մեծին Լեւոնի, 'ի սկզբան գահակալութեանն՝ յամի 1187, և 'ի հանդիպոյն շինեալ միջնաբերդն կամ դղեակն որ և կայ՝ ըստ այնր ժամանակի կոչման. չէ մարթ մատչել 'ի սա՝ բայց շարժական կամրջաւ, որ զի արդ չիք՝ ապա անհուպ և անհետազօտ մնայ ակառնն ամրակուռ. բայց արձանագիր 'ի վերայ մեծի բրգանն անաղարտ մնացեալ՝ ըստ բաղդի անմատոյց դրիցն և ընթերցեալ ճարտարութեամբ, յայտ առնէ զյանգգնութիւն շինուածոյն և շինողին՝ հաւասարազօր բանիւք, որ թերեւս և չքնաղագոյն արձան է՝ 'ի ծանուցեալսն մեզ՝ յաշխարհիս Սիսուանայ.

ՅԱՄԻ ՈՒԼՋԵՐՈՐԴԻ ԹՎԱԿԱՆԻՍ ՀԱՅՈՑ ԽԱՒԱՐԵՑԱՒ ԱՐԵԳԱԿՆ ՄԻՆՉԵՒ ԱՍՏԵՂՔ ԵՐԵՒԵՑԱՆ ԵՒ ԷԱՌ ԹՈՒՐՔՆ ԶՍՈՒՐԲ ՔԱՂԱՔՆ ԵՐՈՒՍԱՂԷՄ. ՅԱՅՆՄ ԱՄԻ ՄՆԱՒ ՌՈՒԲԷՆ ՍՏԵՓԱՆԷԻ ՈՐԴԻՆ ԵՒ ՆՍՏԱՒ ՅԱԹՈՌ ՆՈՐԻՆ ԲԱՐԵՊԱՇՏՆ ԼԵՒՈՆ. ՈՒՆԵԼՈՎ ԶԿԻԼԻԿԻԱ ՏՈՐՈՍ ԼԵՐԱՄԲ ԵՒ ՍԵԱՒ ԼԵՐԱՄԲ ԾՈՎԵԶԵՐԲՆ ՄԻՆՉԵՒ ՅԱՏԱԼԻԱ. ԵՒ ՅԵՐԿՐՈՐԴ ԱՄԻ ՏԷՐՈՒԹԵԱՆ ԻՒՐՈՅ ՍԿՍԱՒ ՇԻՆԵԼ ԶԿԼԱՅՍ ՈՐ Է ՄԱՅՐ ՔԱՂԱՔԱՅՆ ԱՆԱՒԱՐԶԱ. ՃԵՂՔԵԱՅ ԽՍՏԱԳՈՅՆՍ ԵՐԿԱԹԵԱՒՔ ԶԱՊԱՌԱԺՍ ԵՒ ՀԱՍՏԱՀԻՄՆ ՄԵԾԱՄԵԾ ՎԻՄԱՒՔ ԿԱՆԳՆԵԱՅ ԶՊԱՐԻՍՊՍ ԵՒ ՀԱՍՏԱՏԵԱՅ ՏԱՐԲ ԵՐԿԱԹՈՎ ԵՒ ԿԱՊԱՐԱՒ. ԵՒ Ի ՄԻ ԱՄԻ ԿԱՏԱՐԵՑԱՒ.

Շինուածս այս և արձանագիր՝ գիրեարս վաւերացուցանեն, և երկոքին միանգամայն զմեծ զօրութիւն և զհանճար Լեւոնի։ Ի ներքնակողմն կլային եւս ասեն լինել հայերէն այլ և լատինարէն արձանագիրս, այլ ոչ է ստուգեալ[2]։ Բայց մինչև էր ձեռնարկեալ նորա յայս գործ, 'ի միջոց ժամանակի ութսուն ամաց՝ որ 'ի Թորոսէ Ա մինչև ցինքն, ոչ սակաւ անցք անցին յԱնաւարզա և 'ի սահմանս նորին։ Նախ, (ըստ մերս արքունի պատմչի) յամի 1107 Պարսիկք՝ երկոտասան հազար՝ անցեալք « ընդ լեառն Տաւրոս և աւերեցին զաշխարհն Անար- » զարայ, և անթիւ գերութեամբ և աւարաւ գնացեալ » անցին ընդ դաշտն Մարաշայ »։ Երկրորդ անգամ յամի 1110, « Փողովեցան զօրք Թուրքաց և մտին յաշխար- » հըն Անարզարայ, և կոտորեցին զքրիստոնեայս գաւա- » ռին Մարպայոյ. և իշխանն Հայոց Թորոս որդի Կոս- » տանդեայ՝ ոչ համարձակեցաւ ելանել ընդ նոսա 'ի » պատերազմ. և նոքա գնացին յաշխարհն իւրեանց[3] »։ Գոյ Մարապա գիւղ մերձ յԱլպիստան, այլ ոչ թուի ցայն վայր տարածանել աշխարհին Անազարբայ. իսկ թէ որ 'ի սմա մասն այնպէս կոչէր՝ ոչ ունիմ ասել[4]։ — Յետ այսր եկեալ և իշխեալ Թորոս խաղաղութեամբ և մեծ համբաւով երկոտասան եւս ամ՝ յաթոռ իւրում յԱնա-

1 Ոչ գիտեմ արդ՝ թէ Զօրավարացն է պատկերն որ յէջ 160։
2 Տէվիս, 149, իտալերէն առէ ըստ լրոյ։
3 Այսորիկ եւ ըստ արքունի պատմչիս մերոյ։

4 Ալ-Հարիզի ճանապարհագիր Հրեայ՝ առ հարստութեամբ Ռուբինեանց՝ յիշէ Մարապա քաղաք ընդ մէջ Հալպայ և Սրճոյ։ Տես և զոր ասացաք զՄարապայ կամ Մարպայոյ՝ յէջ 157։

զարբա, յոր ապաւինեցաւ յամի 1117 մեծ իշխան մի համազգի՝ Ապլղարիպ, որդի Վասակայ, տէրն Պիրայ, նեղեալ յանդուղ և յանյագ իշխանաց փռանկաց: — Առ եղբարբ նորա Լեւոնիւ՝ կայսրն Յովհան Աղեքս Պերփերոժեն՝ անձամբ խաղացեալ 'ի պատերազմի՝ յամի 1137, յետ երեսուներօթն աւուրց պինդ պաշարման՝ էառ զԱնաւարզա, և զամենայն երկիրն Լեւոնի, նաև զինքն իսկ ընտանեօքն հանդերձ կալեալ՝ գերի վարեաց 'ի Կ. Պօլիս, ուր և մեռաւն: Բայց և ինքեան կայսեր յետ ամաց ինչ (1143, ապրիլ 8), ներհակարար՝ եհաս օրհաս 'ի նոյն սահմանս Անաւարզայ, մինչ բանակեալ էր 'ի հովտի միում լերանց՝ Բոյն կամ Թագուստ Ագռաւուց կոչեցելոյ, Χοράκεων φωλία, ըստ Յունաց[1]. 'ի լեռնակողմանս «ե-» լեալ յորս երէոց, և գտեալ կինջս և կամէր հարկանել » նետիւ. և իբրև եդ զղեղեալ նետն յաղեղն՝ և քարշեալ » 'ի լի՝ խոկոյն խոցեաց սլաքն, և պատառեաց զձախոյ » ձեռն. և 'ի զօրութենէ դեղոյն մահանայր. և իշխանքն » հանեալ զաղիսն՝ թաղեցին 'ի տեղին՝ որ կոչի Գա- » ղըրդիկ, և զմարմինն զմռեալ տարան 'ի Կ. Պօլիս[2]»: Որդի նորա և յաջորդ Մանուէլ՝ որ ընդ նմա իսկ էր, հիմն արկ վանաց 'ի տեղւոջ մահուան հօր իւրոյ, և փութացաւ դառնալ բազմել 'ի գահ նորին: Յետ ոչ բազում ամաց Թորոս Բ զերծեալ յարգելանէ Բիւզանդիոյ՝ ընդ առաջինս նուաճեաց և զԱնաւարզա. որ և յայնմհետէ անկասկած և անհակառակ աթոռ եղև մեծի Պարոնին Հայոց, զամ մի ևեթ արդեօք տուեալ 'ի Մանուէլ կայսր կամ օթեվան նմին եղեալ: — Յայս ակնարկէ Ս. Լամբրոնեցին և յառաջին առումն քաղաքին յԱլեքսէ, յաւելն 'ի Պատարագամեկնիչն. «ՅԱնարզարայ Հայոց իշ-» խանքն եկեղեցի են շինեալ. Հոռոմք առին զտեղին մի » անգամ և երկիցս, և 'ի Հայոց եկեղեցին եպիսկոպոսք » կարգեցին, և յաշխարհէն նուէր՝ եկեղեցւոյն. իսկ Հա-» յոց իշխանքն առեալ զնոյն վերստին՝ զՀոռոմոցն ե-» պիսկոպոս վարեցին, և զեկեղեցին այրի և ունայն թո-» ղին. և է նոյնպէս»: Զայս գրէր երանելին յամս ներքին վրդովման աշխարհին 'ի Մլեհէ՝ յանարժան եղբօրէ Թորոսի, և 'ի սկիզբն պայազատութեան եռանդնարարոյն Ռուբինի Բ. այլ յորժամ յաջորդեաց զսա՝ եղբայր իւր զգօնն Լեւոն, կերպարանափոխ եղև համօրէն և քաղաքն և աշխարհն. և ոչ միայն խոստումն այն և անմատոյց դղեակ՝ ամբարձաւ 'ի կատար քարաբլրին, այլ և համօրէն Անաւարզա պայծառացաւ զանազան դաստ-



61. Նկայն Անազարբայ ըստ լուսագրութեան Favre և Mandrot քննողաց.

1 Եփրեմ Միանձն, 'ի Վիպասանութեան, տող 4011:

2 Այսպէս կոչէ զտեղին մերս Պատմիչ Կիլիկիս:

կնրտօք և ստուար պարսպօք զուգաւորեալ ընդ բերդին. և այնքան հզօր, վայելուչ և պերճ էր յարդարեալ զայն Լևոնի, մինչև զնչան իւր Անաւարզա կոչել, կամ զԱնաւարզայ բերդին պատկեր 'ի նշան իւր սահմանել. որպէս տեսողն և հիւր նորին՝ բազում անգամ յիշեալն առ 'ի մէնջ Վիլլեպրանտ՝ ասէ, Նաւարզա, Navarsa[1] կոչելով և զնչանն և զքաղաքն, բերդ քաջամուր 'ի բարձու լերին, 'ի բնութենէ այսպէս ճահագոյն 'ի միջի դաշտաց երկրին պատրաստեալ՝ վասն Թագաւորին. առ որոյ ստորոտով ասէ զքաղաքն, և ագուգայ ջրոց երկմղոն երկայնութեամբ 'ի վերայ սեանց բարձանց[2]. առ որով համարի կանգնեալ և զեկեղեցի Ս. Գրիգորի Սքանչելագործի ?, որ անդանօր 'ի փախչելն ձիով՝ սայթաքէ, և լեառնն պատառեալ՝ տայ նմա անցս, զի մի 'ի ձեռս հետամուտ ցելն անկանիցի: — Ի ժառանգել Սսոյ զառաջնութիւն չքոյ և ամրութեան՝ ոչ լքաւ Անաւարզա. ակառնն այն բարձրամուր ոչ միայն զառ յինքն ապաւինեալսն պաշտպանէր, այլ և յասպատակել թշնամեաց՝ հրով նշան տայր շուրջակայ բերդորէից: Յամի 1279 զօրավար ոմն Եգիպտացի՝ Պիզար անուն, խաղաղութեամբ եկեալ՝ թշնամօրէն պաշարեաց զԱնաւարզա տասն օր, և ոչ կարացեալ առնուլ՝ աւերեաց զսահմանսն և դարձաւ:

94. Ի շինուածոց քաղաքին՝ առ մերոցս պայազատութեամբ՝ յիշի միայն եկեղեցի Պատկերի Սրբոյ Աստուածածնի, նաև յամի 1285: Պատկերն թուի որիշ 'ի բերելոյն 'ի Կնդռօսկաւի բերդէ, զի զայն՝ ասի Յովհաննու Ալեքսի կայսեր տարեալ ընդ գերութեան Պարոնին Լևոնի՝ 'ի Կ. Պօլիս: — Որպէս առ Յունովք՝ նոցա, նոյն և մերոցս արքեպիսկոպոսական աթոռ էր Անաւարզա. այլ 'ի պատմութեան՝ սակաւք յաթոռակալացն յիշին և կամ մեզ ծանօթք միան, յամս

1174-79. Յովհաննէս.
1198. Կոստանդին.
1263. Յակոբ.
1293. Գրիգոր (յետոյ կաթողիկոս).
1307-14. Յովհաննէս.
1326. Յակոբ (յետոյ կաթողիկոս).
1342. Ստեփանոս.

Գերագոյն 'ի սոսա հանդիսացաւ Գրիգոր, որ և յատկաբար Անաւարզեցի անուանի, այլ զառաջինն կոչէր Մեծքարեցի, առաջնորդ գոլով այնր թեմի և ուխտի: Առ սա գրեաց Օշին տէրն Կանչոյ՝ զչափաբան թուղթն հանդերձ ընծայիւ մատանւոյն[3]: Հմտութիւնն և մաքրութիւն վարուց նորա չեղեն բաւական 'ի միաբանել զազգայինս՝ 'ի խնդիրս ծիսից և տօնից, ըստ եկեղեցւոյն Հռովմայ, յոր՝ թերևս ուժգին թևարկութիւն թագաւորաց՝ վնասեաց քան օգտեաց, և ուծացոյց 'ի յոլովից կամ 'ի սակաւուց՝ զկաթողիկոսն իսկ, զարժանաւորն մեծի վարկի և պատուոյ, և կարգելոյ վերջին 'ի Հարս եկեղեցւոյս Հայոց: Կարևոր գործ գրաւորական 'ի սմանէ մնայ մեզ Յայսմաւուրքն, համախմբութեամբ յիշատակաց Սրբոց երից եկեղեցեաց, Հայոց, Յունաց և Լատինաց, յօրինեալ՝ որպէս թուի՝ յառաջ քան զկաթողիկոսութիւնն. յորում ժամանակի 'ի խնդրոյ նորին՝ Յովհան Եզնկացի խօսեցաւ քարոզ յեկեղեցւոջն Անաւարզայ, 'ի բանն՝ «Աքանչելի եղև գիտութիւն քո». դրուատելով և զնա ինքն զԳրիգոր, սքանչացեալ 'ի քառակի իմն շնորհաց նորին, որպէս ասէն. «Ի զուարթ և հրեշտա-
» կատիպ դիմացդ տեսութենէ, 'ի քաղցր և ախորժա-
» կան բանիցդ արդիւնականէ, յամենայի և 'ի յոգնա-
» փայլ ծաղկանցդ առաքինութեանն՝ որ 'ի հոգոյդ քոյ
» բուրաստանէ, յիմաստախոհ յարակցաց եղբարց և որ-
» դւոց հոգևորաց 'ի քոյդ զմայլելոց վարժական հան-
» ճարասիրութենէ. որ և մեծամեծ բարեացս այսքանեաց
» վայելողս՝ չարժեալ 'ի հնազանդութենէ օրինացն և 'ի
» հարկեցուցիչ հրամանաց, փոքր այս բանիւ սպասաւորել
» ախորժեմ մեծահանդէս ատենիդ»: Զատ յայլոց ներբողինից յեռեալ է Գրիգորի 'ի կարգի Յայսմաւուրացն՝ յամսամուտն նոյեմբերի՝ զիւր յօրինեալ երկար Դրուատ գովեստի յԱմենայն Սուրբս, արարեալ 'ի խնդրոյ Մեկենասի իւրոյ՝ Բ Հեթմոյ, 'ի հինգերորդ ամի իշխանութեան նորին (1293)[4]: Ծանօթ է ամենեցուն սերտ մտերմութիւն սոցա և գործակցութիւն՝ 'ի խնդիրս եկեղեցւոյ, յոր սակս ոչ ժամանեալ Գրիգորի գումարել ժողով, զոր պատշաճն դատէր՝ գրեաց թուղթ աշխարհիկ բարբառով՝ առ նոյն Հեթում, որպէս կտակ հոգևոր աւանդելով. զոր և նոյնպէս յօժարութեամբ ընկալեալ ժողովականաց Սսոյ՝ յամի 1307, մեծարանօք և գործով յիշեն և կոչեն զնա Երանելի հայր իւրեանց: — Միւս գրաւոր և ոչ աննշան գործք Անաւարզեցւոյն՝ են Շարականքն, աւելի քան զերեսուն կանոնք, 'ի յաւելուածս տօնից, և մեծ

1 Այսպէս կոչէն յաճախ և Արաբացիք զքաղաքս զայս:

2 Venimus Navarsam, quod est Castrum optimum in alto monte situm, quod natura in media planicie illius terræ ad totum commodum Domini Regis ordinavit, a quo Rex ipse signum suum *Navarsa* solet proclamare. In pede hujus montis sita fuit quædam civitas, cujus auctoritatem magnam fuisse, quidam mirabilis aquæductus, illuc super altas columnas ad spatium duorum milliariarum productus, hodie contestatur. — WILLEBRAND.

3 Որպէս նշանակեցաք 'ի տեղագրութեան Կանչոյ, յէջ 193-4:

4 Խորագիր, սկիզբն և պատճառ այսպէս կարգելով. «Տօն է ա-
» մենասուրբ Աստուածածնին և ամենայն Սրբոց, յայտնեացն և ան-
» յայտիցն, 'ի սկզբանէ և այսր ընտրելոցն Աստուծոյ 'ի մարդկանէ.
» 'ի Գրիգորէ կաթողիկոսէ ասացեալ Դրուատս: — Կաթողիկէ և
» առաքելական եկեղեցի սուրբ՝ ընկալաւ օրէն և սահմանադրու-
» թիւն, ոչ միայն 'ի նախկին հարցն և 'ի նախապետ մարգարէիցն
» որբոց, զյիշատակս սրբոց պատուել, և տօնել ցնծութեամբ... այլ
» և 'ի նոյն իսկ 'ի սրբոց Առաքելոցն և 'ի նոցին հետևողացն աւան-
» դութենէ՝ սահման և օրէն կանոնի հաստատեցաւ սուրբ եկեղե-
» ցւոյ, պատուել զՍուրբսն տարևոր յիշատակօք, առ 'ի յօգուտ հա-
» ւատակաց: ... Որոց ամենեցունց 'ի միասին օրէն ընկալաւ եկեղե-
» ցի՝ 'ի միում աւուր մեծաւ հանդիսիւ տօնել. զոր զայս ամենայն
» Հոռոմք և չորք պատրիարքարանքն՝ տօնեն 'ի կիրակէն՝ որ է յետ
» Ծննդեան տօնի Իջման Սուրբ Հոգւոյն. իսկ Լատինքն տօնեն
» յայսմ աւուր 'ի մինն նոյեմբերի. զորս ընկալաք և մեք և զայս՝ խոր-
» հրդապէս: Զի որպէս բաւանդակ պտղովք տարւոյն՝ յայսմ յեղա-
» նակի լցեալ մարդիկ, և 'ի շտեմարանս ժողովեալ զհնձեալսն և
» զկթեալսն՝ վայելեն և ցնծան ըստ մարմնոյ, այսպէս և եկեղեցի
» սուրբ՝ զարդիւնս քրտանց երկնաւոր մշակին և փեսային իւրոյ
» Քրիստոսի՝ ժողովեալ զի հունձս հասեալսն և սպիտակացեալսն
» մաքրութեամբ զցօրեանս երկնից շտեմարանացն, և զկթեալսն՝ ու-
» րախարար պտուղս նորոյ այգոյս. որ ոչ փուշ՝ որպէս զկորայէլ,
» այլ խաղող և գինի՝ 'ի ձեռն ճմլական չարչարանացն և արեանն
» Քրիստոսի, ուրախարարք ամենեցուն և զմայլեցուցիչք ամբարե-
» ցան..: Որով նոյն աստուածապետական զլուխն Քրիստոս յամենե-
» ցունց համաձայնապէս... օրհնի, գովի և բարեբանի»:

մասն չափական բանից. որոց եթէ չիք վսեմական ոճ նախնի շարականաց, ոչ պակասեն իմաստք գեղեցիկք, պարզագոյնք և հոգեխօսք, հանդերձ վայելուչ հիւսուածով. յոլովից տնազլուխ տառք կապեն զանուն իւր[1] և զխնդրողացն, որ են՝ Կոստանդին Թագաւոր (յամի 1299-1305), և յաճախագոյն Հեթում, մերթ այսու և մերթ կրօնաւորական Յովհաննէս անուամբ նորին. երբեմն տնակապեալ «Յովհաննէս Տէրն որ նախ արքայն Հեթում». և երբեմն «Յովհաննէս թագաւորահայր եւ Լեւոն արքայ ընկալչիք». ոմանց վերտառութիւնն նուիրեալ առ երգեալն Սուրբս. որպէս, «Գրիգորիսի առ Գէորգէոս վկայ»: Արարեալ է և երիս երիս շարականս Ծննդեան և Յայտնութեան Տեառն, յաւանձին աւուրս զատուցեալ զտօնսն՝ ըստ Լատինաց. Նշանաւոր ինձ և յօժ վայելուչ թուի կանոնն 'ի սկիզբն այսոցիկ շարականաց՝ իբրև նախերգան իմն կարգեալ և պատրաստութիւն Ճրագալուցի աւուրն, որպէս տեսցի 'ի ստորև[2]:

Աթոռ եպիսկոպոսաց Անազարբայ հաստատեալ էր 'ի Կաստաղոն. այլ որպէս 'ի ստորագրութեան սորին ասացաք՝ ոչ թուի հեռաւորն այն անուանի մենաստանն առ Վահկայիւ, այլ թերևս անուանեալն արդ Կասդալ գեօղ, իբր ութ մղոնաւ՝ աւելի կամ պակաս՝ յարևմտից հարաւոյ քաղաքին՝ առ Ջահանաւ, 'ի ճախճախուտ վայրի, առ որով և չամբք՝ կաղաղաք կնճից. ուրանօր արդեաք և որսք և մահացու վէրք Յովհ. Ալեքսի կայսեր: — Ցետ փոխադրութեան իշխանական աթոռոյն 'ի Սի-

[1] Շարականք Գրիգոր կաթողիկոսի Անաւարզեցւոյ.

1. Կանոն Անարատ Յղութեան Սուրբ Աստուածածնի. — 2. Ընծայման Սուրբ Աստուածածնի. — 3. Ճրագալուցի Մկրտութեան և Յայտնութեան Տեառն. — 4. Առաջին աւուր Ծննդեան. — 5. Բ աւուր Ծննդեան. — 6. Գ աւուր Ծննդեան. — 7. Ճրագալուցի Մկրտութեան. — 8. Ա աւուր Յայտնութեան. — 9. Բ աւուր Յայտնութեան. — 10. Գ աւուր Յայտնութեան. — 11. Թլփատութեան Յիսուսի. — 12. Ամենասուրբ Երրորդութեան. — 13. Աւագ երկուշաբաթի. — 14. Աւագ երեքշաբաթի. — 15. Աւագ չորեքշաբաթի. — 16. Ամենայն Սրբոց, այբուբենական. վերջին երեք տունքն նուիրեալ են Ս. Անարծաթիցն, քանզի առ Լատինս 'ի նմին աւուր (1 Նոյեմբ.) կատարի տօն Ամենայն Սրբոց և սոցա առանձինն. — 17. ՀԲ Աշակերտաց Քրիստոսի. — 18. Մատթէի աւետարանչի. — 19. Մարկոսի աւետարանչի. — 20. Ղուկասու աւետարանչի. — 21. Անդրէի առաքելոյ. — 22. Թումայի առաքելոյ. — 23. Սրբոյն Բարսղի. — 24. Ս. Գրիգ. Աստուածաբանի. — 25. Սրբոյն Լէոնի Պապի. — 26. Է Ժողովոց. — 27. Ս. Նիկողայոսի. — 28. Ս. Գէորգայ զօրավարի. — 29. Թէոդորոսի ստրատելատի. — 30. Թէոդորոսի զօրավարի. — 31. Մերկուրիոսի զօրավարի. — 32. Ս. Տարագասեանց. — 33. Ս. Յովհ. Ոսկեբերանի, այբուբենական, մերթ մեծատող, այսինքն հին չափով վեշտասանավանկ, և մերթ կիսակ ութվանկեան. օրինակ իմն.

«Գետ հոսեալ աստուածային, յորում Հոգւոյն ջուրք լըրացան.
Հին և նոր կտակարանաց ուղխքըն ծածկեալք՝ քեւ յորդեցան.
Ադենայ՝ քոյդ վըտակօք տունկք նոր դրախտիս առոգեցան.
Ընդհանուր երկրի աղբիւր, որով բոլոր ազգք արբեցան»:

«Ճառագայթ տիրոյն քոյ հրոյ՝
Ու ի յուղխից չէջաւ ի ջրոյ.
Քեզ՝ թագաւորք ոչ յաղթեցին.
Ըզկեանս՝ պէսպէս կիրք չպարտեցին.
Մահ՝ ըզբերանդ ոչ լըռեցոյց.
Ոչ կափարիչ զլոյս քո թաքոյց:
Զըկողաց՝ ձայն խոցոտիչ.
Զանձն՝ ընդ այրեաց փոխանակիչ»:

[2] Հրաշափառ Ծննդեան Տեառն Ճրագալուցի երկրորդն.

Պատրաստ լեր դու Բեթղեհեմ,
Որ գիւղնակ էիր հովուաց.
Ահա արդ տիեզերաց
Դիշխոյ լինիս քաղաքաց:
Ոչինչ կրտսեր Յուդայի,
Ու փոքր Երուսաղեմ.
Այլ մեծ յիշխանըս Յուդայ
Գըտանիս՝ տունդ Եփրաթայ:
Բանն անըսկիզբըն ի Հօրէ՝
Որ նախ քան զթիւ աւուրց է,
Ահա ի քեն ելանէ,
Որ զնորա իսրայէլ հովուէ:
Պատրաստ լեր դու Բեթղեհեմ,
Յաջորդեցիր Եփրաթայ.
Ահա Դաւիթ նոր արքայ
Ծնեալ ի քեզ նոր մանկանայ:
Դաւիթ երբեմն որ մանուկ
Նախ զհօտն ի քեզ արածէր,
Ի քեզ նախ յաղթող եղեալ՝
Զգազանս ձեռամբ սատակէր:
Նորա այժմ ի քեզ ծնանի
Որդի պտուղ արգանդի,
Որով երդումըն լընու
Արժանութեան զաւակի...:
Ահա, ով դու Բեթղեհեմ,
Այսօր փոխանակ դրախտին՝
Լինի այրըն նոր երկին,
Եւ մըսուրն՝ աթոռ վերին.
Պատրաստ լեցիս և դու, այր.
Եւ յաջորդեցիր, մըսո՛ւր,
Տանիլ զփառաց թագաւորն
Զանպարագիրն եւ զանուրն:
Պատրաստ լեք և դուք հովիւք,
Եւ զփողոց 'ի բաց ընկեցէք.
Եւ ընդ հրեշտակս երգեցէք,
Աւետիս մեծ հնչեցէք:
Պատրաստ մոգիք մարգարէք,
Զգուշակեալն յառաջ բերէք,
ԶԱստուած աստուածաբանել՝
Որ մարդ յանձն առնու ծնանել:
Պատրաստ լեք դասք հրեշտակաց,
Յերկրի լինել ուրբաթաց,
Արկէք աթոռս ի յերկրի.
Տէրըն ձեր ծնանի յայրի:
Տէր մեր, խոնարհիս
Եւ աշխարհագրիս.
Թագաւորդ աղքատացեալ,
Եւ ընդ ծառայս Տէրդ գրեալ.
Գաս աշխարհագրել,
Ըզգիր մեղաց ջնջել,
Զծառայեալքս ազատ առնել,
Եւ ի յերկինս ըզմեզ գրել:
Ի Բեթղեհեմ՝ գրիլ ընդ Յովսեփայ
Ի թեթև ամպ, Տէր, նըստեալ՝
Գաս, ըզլընութեան փառօքդ ծածկեալ.
Ի Բեթղեհեմ, զաւակդ Դաւթի՝
Գրիլ ի հարկ ընդ մօր կուսի՝
Գաս Յովսեփաւ, Տէրդ երկնի:
Ծնանիս ի յայրին
Տէր, մանուկ ի կուսէ.
Ըզհնացեալքըս նորոգել,
Զստարացեալքս ի դրախտն ածել:
Տէր մեր, տղայանաս
Եւ աղքատանաս,
Զխորամանկ օձըն պատրել,
Զաղքատ բնութիւնս ճոխ առնել:
Որով զծնեալդ օրհնեմք
Եւ երկըրպագեմք.
Հաւատովք գամք ընդ առաջ
Լուսոյդ՝ քան զարև յառաջ:
Աղբերդ Եդեմայ՝
Զդրախտն այսօր բանայ:
— Պատրաստեաց, կոյս, և խնդա.
Քրիստոս ի քէն մարմնանայ:

սակաւ անգամ յնուհետև հանդիսանայ Անաւարզա 'ի պատմութեան. և տխրական յոյժ տեսարանաւ՝ 'ի սկիզբըն ԺԴ դարու (17 Նոյեմբ. 1307), դաւաճանօրէն սպանմամբ 'ի ժամ խնճոյից՝ գեռաբուսիկ թագաւորին Լեւոնի Գ., ընդ մեծի թագաւորահօր և հօրեղբօր Հեթմոյ Բ., յոխերիմն Պիլարղու Նոյին Թաթարէ, սակս չհաւանելոյ Հեթմոյ տալ նմա 'ի կնութիւն օրիորդ մի արքայազարմն, կամ վասն չներելոյ նորա կանգնել մզկիթ 'ի Սիս: «Ի ստորոտն կամ 'ի գեօղն Անաւարզայ դղեկին», եղև կատարածն այն անագորոյն, որ յիշեցուցանէ զնախճիրս Նախճաւանայ և Խրամայ, յաւուրս առաջին Արաբացւոց, կամ որ առ Բուղայիւն՝ սպառումն նախարարեան տոհմից. զի և աստանօր ասի ոչ պակաս քան քառասնից յաւագորերոյն կոտորեալ, յորս յանուանէ յիշի Օշին սենեսջալ և գունդստապլ: Սակաւ ամաք յետ այսր արկածի, (1314) յիշատակի եկեղեցին «Սրբոյ Մօրս »լուսոյ Տիրուհւոյ և միշտ կուսին Մարիամու Աստուա»ծածնիս ...յառաջնորդութեան տեառն մերոյ Յոհան»նիսի եպիսկոպոսի». ընդ որում յիշին քահանայք և սպասաւորք եկեղեցւոյն Կոստանդին և միւս Կոստանդին, Անդրոնիկոս, և երկու Բասիլիոսք և Ստեփանոս. և սարկաւագունք՝ Վասիլ, Թէոդորոս, Յակոբ և Վարդան Սեւլեանցի [1], հանգուցեալն Թորոս Երէց. և գրիչ բանիցս Նիկողայոս քահանայ ընդօրինակող հաւաքման Պատարագամատոյց գրոց, (որոց արդ օրինակ մի պահի 'ի մեծի մատենադարանին Բարիզու, և միւս՝ 'ի Լոնտրային), երկոքին ևս նորին ձեռաց վաստակք: Յայսմ ևս նուագի տեղին կոչի Դղեակ Անարզաբայ, յորում եկեղեցւոջ թուի թաղեալ «բարեպաշտ և աստուածա»սէր և ողորմածն՝ Կոստանդին թագաւորի »մայրն՝ Տիկին Մարիւնն», կին Պաղտին Մարաջախտի, և դուստր Թոռին մեծին Սմբատայ Գունդստապլի, հանգուցեալ 'ի 27 յուլիսի 1352 ամին: — Յետ բարձման թագաւորութեան Հայոց՝ 'ի մեծի ապստամբութեան Զիւլգատրեանն Շահսուարի (1467), յիշատակի և Անաւարզա ընդ բանաբարեալսն առ 'ի նմանէ. յայնմհետէ ոչ ևս երևին հետք նորա 'ի գիրս, ըստ իմ գիտութեան, և ոչ ժամանակ աւերածին և լքմանն՝ յոր մնայ արդ: Բայց կանգուն կան տակաւին պարիսպքն՝ մանաւանդ ներքինն, լուսնաձև կամ հնգանկիւնի բոլորեալք յարևմտից և յանգեալ 'ի քարաբլուրն՝ ընդ արևելս, 56 քառակուսի բրգամբք, մէն 35 Զ. հեռի 'ի կենդրոնէ միւսոյն, որ է կէս նետաձիգ (ըստ Դեսիէի), և 10 Զ. իւրաքանչիւր կողման բրգան. բովանդակ կոփածոյ են քարինքն՝ այլ չարք, 'ի հնագոյն շինուածոց հանեալք և հիւսեալք աստանօր. արևելեան դուռնն խցեալ է, նեղ անցս թողլով. երկու ևս դրունք են ընդ Հս. Ե. և ընդ Հս. Մ., և չորրորդ մի ևս ընդ արևմուտս՝ մեծագործ, իբր յաղթական կամար, երիւք մուտք, 22 1/2 Զ. ընդ լայն, 5, 60 խոր. միջին կամարն մեծ՝ բարձր է 3, 75 Զ., կողմնականքն՝ 3, 50 Զ., երկչափ լայնութեամբ փող կամ սրահակ գործեալ է ընդ թանձրութիւն որմոյն. և 'ի միջոցս դրանցն են զուգակ սիւնք կորնթեանք 6 1/2 Զ. բարձրութեամբ՝ հանդերձ դրուագեալ քուզքն. կայ և անդստատակ առաջի դրանն, կորընթաձև փորագրաւոր սեամբ. և այս ամենայն երևի, ըստ Դեսիէի, յԲ դարու Քրիստոսի շինեալ, (թերևս 'ի Ներուայ): Երևին և խրամքն շրջապատք. և յաջմէ մեծի դրանն՝ առ ստորոտով քարաժեռին՝ հին Թատր և Ասպարէզ՝ յեցեալ 'ի նոյն քարաժայռ, յորում երևին և ծակք մարդակաց ձեղուան նախադրանց. բոլորավայրն ասպարիզին՝ փորեալ է 'ի քարաբլրին: Ի հանդիպոյ դրանն եռակնեայ հոյակապ կամար Յաղթութեան, և հետք սիւնաշարից՝ որպէս 'ի Պոմպէուպօլիս և 'ի Պոռոոմ: Ի վերոյ քան զթատրն՝ են շիրիմք և տապանք վիմափորք, յորոց ոմանց 'ի վերայն փոքրիկ բագինք կամ խորանք: Երևին 'ի քաղաքամիջին և մնացուածք ինչ եկեղեցեաց, յորոց




62. Արձանքանդակ յուշագիր, մերձ յԱնազարբա.

մին մեծ 'ի կենդրոնական վայրի: — Ի դերբուկս անդ հաստատեալ են 'ի տասն ամաց հետէ իբր 20 տունք, խընամօք Նիկողոսի Աղան տրիպոլեցի Ասորւոյ, որ զքաղաքատեղին և զահմանսն՝ մասամբ 'ի վարձու կալաւ և մասամբ գնեաց 'ի պետութենէ, և սկսաւ մշակել: — Նշանաւոր արդ քան զայսոսիկ են Ագուգայքն երկու, ընդ Հս. Մ. քաղաքին ձգեալք. մին՝ (որոյ տակաւին կանգուն կան 32 կամարք)՝ իբրև ընդ 20 բնամղոն, միւսն 12, համակ քարաչէն կոփածոյ վիմօք, և կամարակապ, ութ Զ. բարձրութեամբ. յայտ է թէ յայլ և այլ աղբերաց կամ գետակաց բերելով զջուրն. մին՝ գրեաթէ յականց Սըմպոսի առ Պուճագ գեօղիւ, որ վեց ժամու հեռի է 'ի քաղաքէն՝ 'ի Հս. կուսէ. միւսն երկու ժամու ևեթ 'ի Հս. Մ. առ Համան գեօղիւ: Է և երրորդ ագու-

[1] Ոչ այն՝ որ ճանաչի հեղինակ աղճատական ընդդիմաբանութեան առ Լատինս, յաւուրս թագաւորութեան Հեթմոյ Առաջնոյ:

գայ ստորերկրեայ, փողրակօք բերելով զջուրն 'ի Հս. Մ. կուսէ՝ յանուանեալ Աշլաճ-պունար աղբերէ։ Հանդէպ կամարաց ագուգային 'ի քարաժեռի ուրեք իբր 300 Զ. հեռի յաւագ դրանէ քաղաքին կայ խորաքանդակս այս յունական արձանագրաւ, կիսով չափ եղծեալ (տես յէջ 243). ոմանց թուեցաւ թէ ձախակողմեան պատկերք կերպարանիցեն զերեսին կենսաշիւս և կենսախուզ Պարկայս. իսկ աջակողմեանն՝ հալածողս ոմանս անգեղց կամ առասպելեալ Հարպեայց։

95. Յիշեցաք 'ի կարգի ստորագրութեան քաղաքիս զտեղիս ինչ նշանակեալս 'ի նախնեաց՝ լինել 'ի սահմանս Անազարբայ, որպէս՝ Քաղրդիկ, բերդն Սիմանակլայ և վանք Նորին, ուր խնդրեսցէ ընթերցողն. յաւելցուք և զՏուպնի, բայց ոչ գիտեմ շինական տեղի իցէ թէ բնական. յիշէ զայս արքունի Պատմիչն, յասելն վասն Ստեփանէի յամի 1157, զբնակիչս Պեհեանոյ բերդի զապաւինեալսն յինքն՝ « առեալ զամենեսեան կանամբք և » որդւովք, տարեալ 'ի դաշտն Անարզաբայ՝ բնակեցուցանէր 'ի Տուպնին. որք և անդ վախճանեցան 'ի չուղոյն »։

Իսկ Նոր տեղիք վիճակին Անաւարզայ՝ որպէս և ամենայն սահմանք Նորին՝ անծանօթ միան և աննշանակ 'ի քարտս. միայն Հաճիլէր գեօղ յայտնի 'ի հիւսիսակողմն, ժամաւ հեռի 'ի քաղաքէն առ վտակաւ փոքու, յորոյ վերայ և կամուրջ արկեալ է։ Մերձ է 'ի սա 'ի Հս. Ե. Չէօրէկլի գիւղ, որ է հաւանօրէն յիշեալն վերագոյնդ (յէջ 236) և յառաջագոյն ևս՝ Ճուրակլի գիւղ։ — Իսկ յարեւմտակողմն՝ 'ի լերանց անջրպետաց Սարոսի և Ջահանայ՝ անստոյգ ընթացիւք նշանակին գետակք օժանդակք յետնոյս. մին Բալդալա կոչեցեալ բազմառաջ ակամբք, և 'ի միջին կամուրջ արկեալ 'ի լերին, առ որով և Սայկէչ? կամ Սայլա և Սօյսուն գեօղք. 'ի հիւսիսոյ կուսէ Գասդալայ Թուի խառնուրդ գետակին 'ի Ջահան. — միւսն՝ որ 'ի հարաւոյ կուսէ խաղայ իբրև զուգահեռական Բալդալայ, կոչի կամ կոչելի է Խաճ-տէրէսի, զի առ ակամբք Նորին՝ որ մերձագոյն է 'ի Սարոս՝ կայ համանուն հանգրուան՝ 'ի ստորոտս Թըլլի՝ այսինքն հողաբլրոյ, Խաճ-տէրէ-բէփէսի կոչեցելոյ, առ որով են գերեզմանք լեռնականացն կոտորելոց 'ի մարտս Տէրվիշ փաշայի։ — Նման իմն այսմիկ դէպք պատահեցան 'ի տեղւոջս՝ և 900 ամօք յառաջ. քանզի զայս իսկ համարիմ լինել Բլուր արեան, յոր 5000 հեծեալք Արաբացիք զերծեալք 'ի մեծէ պատերազմէն մղելոյ առ Ատանայ քաղաքաւ, առաջնորդութեամբ Զմշկիկն Յովհաննու, յամի 963, թողեալ զերիվարս իւրեանց՝ ապաստանեցան 'ի դժուարակոխ լեռնաբլուրս, և պաշարեալք 'ի Բիւզանդացւոց՝ ոչ կամեցան անձնատուր լինել, այլ ոգորեալք մինչև ցմահ, ամենեքին կոտորեցան անդէն. և ապաժոյժ արեանցն վտակօրէն վիժեալ իջանէր 'ի բանակն կայսերական. վասն այնորիկ կոչեցաւ Բլուր արեան, Βουνὸς αἵματος. և այս հռչակեաց զհամբաւ քաջութեան Զմըշկիկին, և ամբարձ 'ի գահ կայսերական, թէպէտ և դաւաճանութեամբ[1]։ — Ընդ մէջ սորա 'ի հիւսիսոյ կուսէ և Սայկէչի՝ 'ի հարաւոյ, նշանակին 'ի լեռնոտին հանգրուանք կամ գեօղք Փիւչ-էյ-Գաւնէ? և Չիլ-խան. անուն սորա յանկագոյն է Ջլկանոց բերդի, որոյ տէր Հեթում ընդ այլոց աւագ արանց և ռամկաց՝ անկաւ 'ի պատերազմի, յամի 1322, վարեալ յԵգիպտացւոց 'ի կողմանց Այասայ՝ 'ի Սիս[2]. — Բովանդակ սահմանքս կոչին յայժմուս Սարի-չամ վիճակ, որպէս թուի վասն ծառոցն եղևնեաց, և բնակութիւն կամ կալուած էին Սարգանտ-օղլու Թուրքմանաց, յորոց անուն կոչէր և հանգրուանն Չիլ-խան, զի անդ բնակէր երբեմն գլխաւոր նոցին Մօրթազ-աղա, առ որում ագաւ բուսաբանն Քօչի, յամի 1859 (4 մայիսի). և նշանակէ 'ի կողմանս յազգէ բուսոց, զՃանդի (Scandix Balansæ), տեսակս Շանձուց (Orchis sacra և O. Flagrans), և այլ Նոր անծանօթ տեսակս. յաւագուտ գետեզերս, Շէկխարի այլախան (Anchusa hibrida), Վառվռուկ խոզանուտ (Alyssum hirsutum), Բզբուկ Նրբատերև (Alsine tenuifolia). 'ի խոնաւ կողս լեռնաբլրոց՝ Ցաղթուկ Նարբոնեան (Vinca narbonensis), և այլ և այլ տեսակս յազգէ Նուիձենեաց (Aroideæ).

Ի կզզիացեալ միջոցի վիճակիս Անազարբայ, յարեւմտից Ջահանայ, և 'ի հիւսիսոյ և 'ի հարաւոյ երկոցուն յիշեալ օժանդակացն, և յարևելից լերանցն անջրպետաց, գրեաթէ 'ի կենդրոնի՝ ամբառնայ մեկնակ քարաբլուր մի ափափայ՝ 'ի ծաղկաւոյս անմշակ երկրէ, և կրէ 'ի գագաթանն զմի 'ի հզօրագոյն բերդից Սիսուանայ, որոյ այժմեան կոչումն Թումլա կամ Թումլօ կամ գուցէ լաւ ևս Թումլու Գալէսի՝ ծածկէ զհին անունն, և ցարդ ոչ ստուգեցաւ 'ի դասակարգէ յիշեցելոցն յետ ԺԲ դարու. յորոց՝ դիպողագոյն, թէ մարթ էր առել ընդ երկբայս, համդիպի Անէ բերդ, որ այլ բնաւ չյիշի 'ի պատմութեան, բայց 'ի նուագի թագադրութեան Լևոնի, իշխող ունելով յայնժամ զփռանկանունն Հենրի (Henri). տակաւին կանգուն կան կամարակապ սենեակք 'ի բերդին և մատուռն մի։ Լանկլուա սխալէ՝ համարելով զսա լինել Ատամիատանն Վիլլեպրանտայ, այն է Ամուտայ, չեղեալ միտ ամենայն բանից հին ուղևորին։ Իսկ Ֆավռ և Մանտրոյ՝ որք քննեցին զտեղիս՝ յամի 1874, չտեսան ինչ ծանօթս. և ոչ շատ ինչ[3] Քօչի, որ ('ի 5 մայիսի, 1859) եկն այսր 'ի խնդիր բուսոց, նշանակէ զՇանձուք ծորուն կամ պարկաւոր, Orchis saccata.

1 ԿԵԴՐԵՆՈՍ, տպագ. Պոնայ. էջ 360-1։ — Քանզի հրամանաւ Նիկեփոր կայսեր եկեալ էր Յովհաննէս, պատմիչ մեր Ուռհայեցի՝ փոխանակ առաքելոյն զաւաքողն յիշէ իբրև գործօն. « Եկաւ, ասէ, » զԱտանա և զՄսիս և զականաւորն զԱնաւարզա, և ահագին և » սաստիկ կոտորած էած 'ի վերայ ազգին... և դարձաւ Թագաւորն » Նիկիփոռ մեծաւ յաղթութեամբ, անթիւ գերութեամբ և բազում աւարաւ »։

2 Յիշեցաք զբերդս զայս և 'ի տեղագրութեան Ճուաչ գետոյ յայտ երկբայութեամբ. հաւանագոյն թուի յայժմու նշանակեալ կողմանս լինել, թէ և մերձագոյն անուամբ ևս նշանակի վիճակ մի Չելտիւլ յանկոյս (յարևելս) Սևաւ Լերանց և Պուլանըրդ վիճակի։

3 *Tumla Gala*, eine felsige Anhöhe auf einer weiten, blumenreicher Steppe. Das mächtige Kastell, welches die Höhe krönt, stamt noch aus der Zeit, als die Armenischen Könige zu Sis residirend. — KOTSCHY.

## ՄԱՄԵՍՏԻԱ = ՄՍԻՍ

96. Մի յերից գլխաւոր քաղաքաց դաշտայնոյն Կիլիկիոյ՝ Մամեստիա, զարեւելեան հարաւային մասն երկրին ունի վիճակ, և սահմանի 'ի հիւսիսոյ՝ Անազարբաւ, յարեւմտից՝ գաւառաւ Ատանայ և անծանօթ անջրպետօք Ջահանայ և Սարոսի, 'ի հարաւոյ՝ ընդարձակ դաշտագետնաւն մինչև 'ի Այաս, յարեւելից՝ լերամբք որ զհիւսիսային արեւմտեան եզերս Հայոց ծոցոյն պարապեն, և 'ի այն խել անուն քաղաքին՝ կոչին Մսիսայ լերինք, Ճէպէլ-Միսիս։ Ընդ բովանդակ երկայնութիւն երկրին՝ 'ի հիւսիսոյ ընդ հարաւ իջեալ խաղայ գետն Ջահան՝ խոտորնակս դարձուածովք, այլ ոչ շատ շեղի յուղղութենէ Հր. Հր. Եւ. գծի։ Աջակողմն՝ որ է արեւմտակողմն և դաշտավայրն՝ բացաւ ամայի երեւի 'ի քարտս, աննշանակ 'ի շինից. ձախակողմն՝ որ փոքրագոյն մասն է՝ ծանօթագոյն է յաւէտ յիշեալ լերամբքն։ Են սոքա շարք իմն լեռնակոյտոց քան լերանց, և յանկեանէ ծոցոյն Այասայ (որ յարմկնաձև զօգ Ջահանայ ամբառնայ Ճէպէլ-Նուռ լեռան 608 Զ. բարձր), ձգին նոյն ձեւով արեւելեան կամ անկեան՝ յերկուս գծիւ, մին ընդ արեւելս հիւսիսոյ ցամաքմամբ Սեաւ լերանց, միւս՝ ընդ արեւմուտս հիւսիսոյ՝ ցանուանի բերդն Օձից՝ Շահի-մարան, զոր համարիմ սահմանորդ այսր վիճակի և Անազարբայ։ Միջին մասն արեւմտեան գօտւոյս և միջնագոյն 'ի Մսիս, զուգէ և բարձրագոյն 'ի բովանդակ պարան, կոչի Ճէպէլ-էլ-Նուր, جبيل النور Լուսոյ լեռան, (գուցէ Շաղակաթն?) 716 Զ. բարձր, հոյակեալ յարեւելեայց փառն ուսասումթեան 'ի նմա բժշկական բուսոց, այր ասեն Լոքմանայ բժշկապետի հետազօտեալ և հաւաքեալ։ Արեւմտեան գօտին՝ որ երկայնագոյն է և պարտի գծովք երբ Այասու՝ կոչի Ալիբրան, որոյ է Թուի 'ի Շահի-մարան բերդէ. 'ի միջի կոյսին թեւոյն դաշտն կամ հովիտ՝ կոչի բառ անուանց Արից։



63. Մամեստիա = Մսիս քաղաք.

Նախանձորդ կամ հետեւող Ալաբացւոյն՝ ծանօթ բուսախոյզն ստաւրիացի Քոչի՝ եկն 'ի քննին Լուսոյ լերին՝ յամի 1859, 'ի վերջին աւուրս ապրիլի (24-6), յարեւմտից կողմանէն 'ի Մսիսայ, և յառաջին գագաթանցին ենար զիրանուր՝ ընդ թզենեաց և նռնենեաց, որ երբեմն պարտէզ էր ոստանն հողի՝ Համի էֆէնտի կոչեցեալ, և ապրիլը երկու ստորին գիւղին. յայնմ եղանակի չքնաղ երեւեցաւ նմա տեսիլ անապատանման դաշտոյն

յինքենէ նշանակէ զՄրուան տակ կամ Նուրճ Դիոսկո֊րիտեան, Ուրց վայրի (Anthriscus silvestris), Ձիալա֊խուր, տեսակ մի Քրքմոյ առ աղբերբ. — առ ստորոտովք լերինն՝ Քիսամն, Վլինգն, Մաշկէպ, Թաղթ, Շանձուք բազմատեսակ, Ձիթենի, Դափնի, Կաղամախենի. — տա֊կաւ ուրեք՝ Ալոսր, Ցակրի (Rhamus Alaternus), Փըր֊փրերան, Ցօնեղ[1] (Ophrys), Ագռաւաթուր (Gladiolus), և այլն։ — Ի բարձունս առ աղբերակամքք՝ Պտիկք (Anemones), կակաչ Քրիստոսի-աչք անուանեալ տեսակն, Շամփիտակ արևելեան (Symphytum), Կակէա (Gagea), Կաթնխոտ (Polygala supina), Տորոն, Կաքաւկրկուտ կարմրակապոյտ (Lythospermum). — 'ի ծերպս վիմաց՝ Հացհամեմ, Կոկուկ (Ysatis), Ծնուկ (Ajuga), Ուրց վայրի, Եղինճմայր (Lamium), Իշհոտոտ (Onosma-congesta), Եզնախոտն, Փայծեղնիճ (Asplenium), Մկնասխ, նոր տեսակ մի Խառածաղկի (Ranunculus Malabailæ) մերձաւոր տեսակի միւռոնատերևին (R. myriophyllus), Վարդն հարիւրաւամ (Rosa centifolia), Տորոն կարծրա֊տերև, և այլն։ Ուխտագնացն Մէքքէի՝ Էտիպ, գովէ զյակինթ ծաղիկ Ճէպէլ-Նուրի և զմանրագոր կամ լօշ֊տակ՝ յոյժ ազնիւ։ Զհամբաւ բժշկական բուսոցն յիշէ և Պօղ-Լուկաս փռանկ, որ յամի 1704 էանց ընդ կողման֊քըս, Gebel-Nours կոչելով զլեառնն, և թարգմանելով Ծաղկանց լեառն, Mont des fleurs.

97. Հինգ մղոնաւ 'ի հիւսիսոյ Նուր լերին և 15 մղո֊նաւ յարևելից Ատանայ՝ կշիռ ընդ նովին լայնութեամբ, յաջմէ Ջահան գետոյ որ է 'ի հիւսիսոյ՝ Նորով մասամբն, և յահեկէ՝ հնովն՝ զետեղեալ կայ քաղաքն Մոպսուեստիա. այսպէս 'ի յունական երկուց բառից յօդեալ, Μόψου ἑστία, որ նշանակէ Մոպսու բագին[2]. զի ըստ Յու֊նաց առասպելաց՝ Մոպսոս որդի Ապոլոնի և Մանտու հարցկի՝ յետ Տրովական պատերազմին եկեալ յափունս Կիլիկիոյ, եկաց նախ 'ի Մալլոս, և հաստատեաց անդ տուն կամ մեհեան գուշակութեանց. ապա ազորեալ ընդ Ամփիլոքոսի՝ սպանան երկոքին ևս, և կանգնեցաւ աստ բագին յիւր յիշատակ. վասն որոյ յոլովք 'ի դրամոց քա֊ղաքին կրեն զպատկեր ատրուշանի, որպէս և տեսանի



65. Հին դրամ Մոպսուեստիոյ.

'ի սմին։ Անունն համառօտեալ 'ի միջին դարս փոխի, Մամեստիա, և յաճախ ևս Մսիս, որպէս և ցարդ. առ Արաբացիս ևս կոչէր Մէսիսա՛ مصيصة, առ Թուրքս Միսիս, ميسيس. իսկ առ արևմտեայս միջին դարուց պէսպէս այլայլմամբ՝ Mamistra, Mampsysta, Mansista, Mamysta, Malmistra, Manustra, Manustria, Mamistria, և այլն։ Հնագոյն հեղինակք երբեմն պարզապէս Մոպ֊սոս կոչեն, Mopsus. Կիկերոն՝ որ բանակեցաւ 'ի տեղւո֊ջըս՝ յերթալն 'ի Տարսոն, թերևս առաջին է՝ առ որում գտանի Մոպսուեստիա կոչումն[5]։ Յետ դարու միոյ՝ ընդ ազատ քաղաքս պատուեալ էր 'ի Հռովմայեցւոց. զոր յայտ առնէ և պղնձեայ դրամս, յունարէն ΑΥΤΟΝΟΜΟΥ, ինքնիշխան բառիւ, 'ի միում դիմի կրելով պատըւ֊



66. Դրամ Մոպսուեստիոյ առ Հռովմայեցւովք.

պաւոր պատկեր զքաղաքին, 'ի միւսումն զյաղթակիրն Արամազդայ. Նոյն ազատութիւն վկայի և արձանագրու֊թեամբ Ադրիանու կայսեր, որ արար շինութիւնս 'ի քա֊ղաքին, վասն որոյ և յիւր անուն ևս մականուանեցաւ, Hadriana Mopsuestia. և 'ի յունական արձանագրի գը֊տելոյ 'ի քաղաքի աստ՝ պէսպէս ճոխական մակդրօք կո֊չի, սուրբ, ազատ, անդրժելի, ինքնագլուխ, բարեկամ, և դաշնակից Հռովմայեցւոց. ΤΗΣ ΙΕΡΑΣ ΚΑΙ ΕΛΕΥΘΕΡΑΣ ΚΑΙ ΑΣΥΛΟΥ ΚΑΙ ΑΥΤΟΝΟΜΟΥ, ΦΙΛΗΣ ΚΑΙ ΣΥΜΜΑΧΟΥ ΡΩΜΑΙΩΝ.

Մի 'ի հնագոյն պատմական յիշատակաց Մսսայ է գալուստ Սելևկոսի որդւոյ Անտիոքոսի Գրիպոսի, յամի 94 յառաջ քան զթուական Փրկչին, յետ պարտութեանն յՍեաւերեայ Կիլիկեցւոյ, և ծանր հարկապահանջութեամբ նեղելն զքաղաքս. որում ոչ հանդուրժեալ բնակչացն՝ հուր հարին յապարանս նորա և ընդ նմին այրեցին։ Ի դարս քրիստոնէութեան՝ Մոպսուեստիա զառաջինն սոսկ եպիսկոպոսական աթոռ կարգեալ, յետոյ ստացաւ պա֊տիւ ինքնագլուխ կամ մետրապօլտական եպիսկոպոսու֊թեան։ Մի յառաջնոց եպիսկոպոսաց նորին է Ս. Աւ֊քսենտ, երբեմն զինաւոր, նահատակեալ առ Լիկիանո֊սիւ, յամի 316։ Անուանի եղև 'ի Ե դարու գիտութեամբ և թիւր վարդապետութեամբ ևս՝ Թէոդորոս եպիսկոպոս (կացեալ զամս 36), որում յատկացաւն Մոպսուեստացի կոչումն. սմա աշակերտեալ Նեստորի՝ առաւել ևս թիւ֊րեաց և ծնաւ զնզովելի աղանդն. մինչև էր յայտնեալ մոլորութեան Թէոդորի՝ ընտանութիւն էր Թարգմանչաց մերոց և թղթակցութիւն ընդ նմա. և 'ի խնդրոյ Ս. Մեսրովպայ երևի գրեալ նորա զԱզանդոյ Պարսից, յորմէ արդեօք օգտեցաւ ինչ և մերս Եզնիկ. այլ 'ի յայտնել թերուղիղ մտաց նորին՝ զգուշացուցին Հարք Եփեսոսի ժողովոյն զմերայինս 'ի գրուածոց նորին, և Ս. Սահակ յապահովեաց զնոսա իւրով թղթով։

Հանգոյն այլոց քաղաքաց Կիլիկիոյ՝ առիթ բանսրա֊րութեան եղև Մամեստիա ընդ Բիւզանդացիս և ընդ Ա֊րաբացիս. առքա յելս Է դարու տիրացան քաղաքին, և ըստ ժամանակագրին մերոյ (Անեցւոյ), յամի 692 « Տի֊

1 Ըստ յունական բառին, ὀφρίς, որ նշանակէ յօնս։
2 Այլք ստուգաբանեն ըստ լատինական լեզուի Mopsi ostia, կամ Mopsi vates, իբրև նշանակելով զՄոպսեայ ըղձութիւնս։
5 Cum castra haberem in agro Mopsuestiæ.

» Նեաց Մոլիմն զՄամեստիա՝ որ է Մսիս, բարձր պարըսպօք », և Արդուաշիմ ոմն կարգեցաւ կուսակալ. մինչև ցկէս Ժ դարու յերկարագոյն ընդ սոցա իշխանութեամբ մնաց տեղին քան ընդ Բիւզանդացւովք, մինչև երկիցս՝ յամս 962 և 965՝ թափեաց 'ի նոցանէ Նիկեփոր կայսր, և յայնմհետէ տկարացաւ ձեռն հակառակորդացըն։ — Ի սկզբան պայազատութեան Ռուբինեանց ունէր զՄսիս՝ Ապլղարիպ որդի Խաչկայ Արծրունւոյ, կողմնակալ կարգեալ Կիլիկիոյ հրամանաւ կայսերացն. յորոց խլեցին Խաչակիրք յառաջին մուտս իւրեանց 'ի Կիլիկիա, կամ թէ ինքնակամ յափշտակեաց զայն յանդուգնն Տանկրետ. և 'ի սմանէ կորզել կամեցեալ յանդըգնագոյնն և խակամիտ Պալտին, որպէս երբեմն զՏարսոն, առաջի քաղաքիս ոխերիմ ատելութեամբ բախեցան ընդ միմեանս գունդք երկոցուն. աստանօր և յաղթող գտաւ բազմութիւն Լոռենացւոյն (Պալտինի). այլ 'ի վաղիւն հաշտեալ ընդ միմեանս նախանձորդացն՝ Տանկրեայ մնաց քաղաքն, զոր և յօդեաց յետոյ յիշխանութիւն Անտիոքայ։ Յայնմ ժամանակի ըստ վկայութեան Տիւրացւոյ եպիսկոպոսին պատմչի Խաչակրաց[1], էր Մամեստիա մի յազնուագոյն քաղաքաց Կիլիկիոյ ամրութեամբ, բազմամարդութեամբ և բարգաւաճութեամբ վիճակին։ Բայց դարձեալ զերծեալ երևի և ընդ ձեռամբ կայսեր գրաւեալ. քանզի երկրորդ անգամ նուաճեաց զայն Տանկրի յամի 1106, յորում Ասպետ հայազգի էր քաղաքապետ, այր՝ երբեմն անուանի յոյժ քաջութեամբ և կորովութեամբ, այլ յայնժամ թուլացեալ շըւայտութեամբ. յորոյ վերայ եհաս Տանկրի տասն հազար Հայ և Փռանկ զօրօք՝ ընդ ցամաք, և ընդ գետն՝ նաւուք, և նուաճեաց։

Ի զարգանալ Ռուբինեանց՝ վիճի առիթ եղև Մսիս ընդ Նոսա և ընդ Անտիոքացիս, մինչև Թորոս Բ հաստատութեամբ նուաճեաց զմեծ մասն Կիլիկիոյ, և ընդ առաջինսն զքաղաքս զայս, կալեալ 'ի նմին և զդուքսն Թոմաս. անդ և ինքն՝ յամի 1152՝ պաշարեցաւ յԱնդրոնիկոսէ ազգականէ կայսեր, որ նախատանօք արտաքս կոչէր զնա, և խոստայր կապել երկաթի կապանօք հօր նորին և տանել 'ի Բիւզանդիոն. իսկ Թորոսի զկծեալ 'ի բանից անտի՝ արար գործ անակնկալ յանդգնութեան և քաջութեան. զի զոր ոչ կարացին թշնամիքն արտաքուստ՝ ինքն 'ի ներքուստ « պատառեաց՝ զպարիսպն Մսայ՝ » 'ի գիշերի, և յարձակեալ առիւծաբար 'ի վերայ նոցա, » և 'ի սուր սուսերի մաշէր զնոսա ... և զթուլամորթ » Յոյնսն կալեալ՝ մերկացուցանէին և արձակէին. և » տիրեաց Թորոս Մսայ անհոգութեամբ և ամենայն » գաւառացն զոր ունէր[2] ». յայսմ մարտի անկաւ և 'ի Հայոց նիզակակցացն Յունաց՝ Սմբատ տէրն Պապեռոնի, և զերեցան մեծամեծ իշխանք, Օշին տէր Լամբրունի հայր Ս. Ներսիսի, Վասիլ տէր Բարձրբերդոյ, Տիգրան տէր Պռականու, և այլք, և տուեալ փրկանս անձանց՝ զերծան։ Յայտ է և Մլեհի եղբօր և յաջորդի նորա տիրել Մսայ. զի առ սովաւ դարան գործեալ յամի 1171 կալաւ և կողոպտեաց զՍտեփանոս կոմս, զառաքեալն դեսպանութեամբ 'ի թագաւորէն Երուսաղեմի առ Մանուէլ կայսր։ Ի սկզբան պայազատութեան իւրոյ՝ Լևոն Ա (1188) ետ զՄսիս Հեթմոյ՝ որդւոյ Զորտւանելի Սասնեցւոյ, փեսայացուցեալ զնա յԱլիծ՝ դուստր Ռուբինի եղբօր իւրոյ, որպէս և եղբօր նորա Շահնշահի ետ զՍելևկիա։ Պատշաճ դիրքն և մերձաւորութեամբն 'ի ծով՝ հարկ էր Մամեստիոյ վաճառաշահ լինել. մանաւանդ մինչ ընդարձակագոյն կամ զերծագոյն էր հանգետոյն Ջահանայ և դիւրամատոյց նաւաց. վասն որոյ և շահախնդիր ընկերհաշտութիւնք Գենուայ և Վենետկոյ ընկալան 'ի Լևոնէ շնորհս հաստատելոյ 'ի նմին վաճառատունս. և յետ այնր թուի բարգաւաճել քաղաքին. քանզի 'ի գալ անդր Վիլլէպրանտոյ յամի 1211-2 տակաւին չէր բազմամարդ, թէպէտ և ամրացեալ պարըսպօք և աշտարակօք. անշուշտ նորոգեալ և վերականգնեալ յետ կործանմանն 'ի մեծէ սասանութենէ 1114 ամին։ Պայծառագոյն ժամանակ Մամեստիոյ եղև առ երկար թագաւորութեամբ Հեթմոյ Ա. և թերևս չքնաղագոյն 'ի նմա հանդէս՝ ձիաւորութիւն անդրանկան իւրոյ Լևոնի քսանամենի (յամի 1256). յոր հանդէս՝ զատ յայլոց բազմաց՝ կոչեաց զերկոսին փեսայս իւր, զՊեմունդ՝ բրինձն Անտիոքայ, և զՃուլիան՝ տէրն Սիդոնի, հանդերձ կանամբք նոցին՝ դստերօք իւրովք (Սիպիլ և Ֆիմի), և զքոյր իւր Մարիամ կոմուհի Յոպպէի (Գունդէս Ճաֆոյն), « և » զամենայն բարեկամս իւր (Փռանգս) մեծարեաց զալ » յայս կոյս. որ և 'ի վանորէից զամենայն դասս եկեղեցականացն ժողովեաց յառաջիկայ ուրախութեան » գործն. և ձիաւորեցուցին զնա՝ 'ի թուին ՉԵ յամսեանն » նուեմբերի ԺԷ օրն. և ուրախացաւ թագաւորն ուրախութիւն մեծ, հանդերձ հայրն իւրով (Կոստանդեաւ) » և ամենայն զարմիւքն և ժողովովն որ եկեալ էին[3]։ Որքան պայծառ հանդէսն և մեծ էր ուրախութիւն Հեթմոյ 'ի Մսիս, այնքան մեծ և սուգն 'ի նմին քաղաքի՝ յետ տասն կամ մետասան ամաց, և թերևս սրտառուչ քան զառաջինն. զի, ոչ ևս զձիաւորութեան Լևոնի՝ այլ զգերութեանն՝ կատարէր յիշատակ, և զնորին եղբօր Թորոսի սպանմանն 'ի մարտին Մառեայ (1266), ուր զոռոզ յաղթողն եգիպտացի՝ ընդ այլ տեղեաց՝

« Առեաց ըզՍիս և ըզՄըսիս,
Եւ զինչ որ չէն կայր ի միջի[4] »։

Բայց ոչ այնչափ ապականեցաւ տեղին՝ մինչև չկարել կատարել զախրալին հանդիսից Հայաստանեայց՝ յայսմ ամի (1267), զուգելով ընդ մեծագոյն սգաւորութեանն. զի 'ի մերձենալ աւուրց նորոյ ամի և տօնի Յայտնութեան և Մկրտութեան Տեառն՝ հրաւէր համաշխարհական կարդաց թագաւորն մեծոգի, « կոչել զամենայն » իշխանսն՝ զոր հեռի և զոր 'ի մօտ, վասն պատճառի » ջուր օրհնելոյ, 'ի քաղաքն Մսիս. և ժողովեցան ամենայն » նայն իշխանքն որ կային ընդ թագաւորութեամբ նորա

1 Erat autem Mamistra una de nobilioribus ejusdem provinciæ civitatibus, muro et multorum incolatu insignis, sed et optimo agro et gleba ubere et amænitate præcipue commendabilis. — Gul. Tyrensis.

2 Պատմիչ մեր Կիլիկեցի։

3 Նոյն Պատմիչ Կիլիկեցի։

4 Սմբատ Գունդստապլ, 'ի յիշատակարանին. տես յէջ 72։

» 'ի քաղաքն Մսիս. ապա հրամայեաց գալ առաջի իւր
» և նստել. և յորժամ ամենն եկին և նստան, հրամա-
» յեաց սպասաւորացն Թագաւորն, թէ Այլ են պակաս,
» կոչեցէք. և նոքա ասացին. Սուրբ Թագաւոր, ամենն այս
» են որ քեզ առաջի կան։ Նւ Թագաւորն ստիպէր կոչել
» զպակաս իշխանսն և զպարոնայսն. իսկ սպասաւորքն
» Թագաւորին ոչ կարէին իմանալ զմիտս Թագաւորին.
» ապա իշխանքն ասացին ցԹագաւորն, թէ՝ Զոր դուք
» հրամայեալ էք և կոչել՝ ամենն աստ է, և չէ ոք պա-
» կաս։ Իսկ Թագաւորն զայրագին սրտիւ հայեցեալ յայս-
» կոյս յայնկոյս, և ապա հրամայեաց կիսաձայն և ար-
» տասուալի աչօք, թէ, Նրբ ամենն աստ են, ապա ո՞ւր
» են Լևոնն և Թորոսն։ Ցայնժամ սկսան իշխանքն ան-
» մխիթար և ծանր սգով ծեծել և վայ և եղուկ ասել,
» յիշելով զգեղեցիկ որդիս Թագաւորին իւրեանց, զմին
» 'ի ծառայութիւն 'ի մէջ այլազգեաց, և զմիւսն՝ սրա-
» խողխող եղեալ 'ի ձեռաց անօրինաց. և այսպիսի ա-
» ղիողորմ արտասուօք լացին. և ոչ միայն իշխանքն,
» այլ և քահանայք և վարդապետք եկեղեցւոյ... և ոչ
» ոք կայր 'ի միջի նոցա որ մխիթարէր զնոսա, այլ կային
» տարակուսեալք 'ի ծանր սուգն՝ բեկեալ սրտիւք։ Իսկ
» մեծախելք և մեծահոգի Թագաւորն Հեթում՝ ինքն
» յինքեան կանգնեաց զբեկեալ և զտրտմեալ սիրտն
» իւր. և ապա խօսեցաւ բանս մխիթարականս 'ի սիրտս
» իշխանացն և քահանայիցն և վարդապետացն», և
այլն. և եցոյց հնարս գերեթափ առնելոյ զորդի իւր և
զժառանգ՝ Լևոն՝ 'ի սուլտանէն Եգիպտոսի, և յաջողե-
ցաւ։ Հաւատամ թէ մեծ եղև ուրախութիւն սևապակ

67. Ցատակաձեւ քաղաքին Մամեստիոյ.

սրտին՝ 'ի թափելն զնա և յամբառնալ փոխանակ իւր
յաթոռ Թագաւորութեանն, յորժամ «շարժեցաւ տունն
» Հայոց ընդ առաջ նորա ցնծալով», քան 'ի վերոյիշեալ
աւուրն՝ յորում ձիաւորեցոյցն զնա։ — Բայց յառաջ քան
զդարձ Լևոնի, միւս ևս և յետին հանդէս կատարեալ
էր Հեթմոյ 'ի Մսիս, որ զմայրաքաղաքի պատիւ թուի
ժառանգեալ յետ համօրէն հարուածոյ աշխարհին, և
գահուն Սսոյ. 'ի նմին ամի 1268, համազգային ժողով
գումարելով «յարևելից մինչև ցԿիլիկիա՝ 'ի մայրաքա-
» ղաքն Մսիս». և ընտրեցին անդ 'ի կաթողիկոս «զար-
» ժանաւոր վարդապետն Ցակոբ», յ'12 փետրուարի,
որ է նախընթաց կիւրակէ բուն բարեկենդանին։ Ցայսմ
նուագի յիշի և եկեղեցի քաղաքին Ս. Սարգիս, յորում
կատարեցաւ մեծաւ հանդիսիւ կարգ օծման կաթողիկո-
սին։ Զատ յայսմանէ գտանեմ միայն զյիշատակ Ս.
Ստեփանոս եկեղեցւոյ՝[1] յամի 1315, յորում տակաւին
մայրաքաղաք կոչի Մամեստիա։ — Վիլէպրանտ յամի
1212 պատմէ՝ զի ցուցին նմա 'ի Մսիս զհանգստարան Ս.
Պանդալէոնի, և զի 'ի քաղաքէ աստի էր Ս. Սերվատիոս։
Ի հասարակաց շինուածոց յիշի յայսմ ժամանակի և
մեծ կամուրջն Մսսայ. զոր յամի 1274 խլեաց Պնտուխ-
տար սուլտան, ըստ ժամանակագրին, իսկ ըստ Գունդ-
ստապլին՝ «աւերեաց զՄսիսայ կամրջայն, ու գնաց
» մինչև 'ի Կոռիկոս»։ Նշանաւոր է կամուրջս՝ հնու-
թեամբն, չինեալ երբեմն 'ի Կոստանդեայ կայսերէ՝ որ-
դւոյ մեծին Կոստանդիանոսի և նորոգեալ 'ի Ցուստի-

1 Ցեղէ զայս Կիրակոս ամս երեց, գրելով աստանօր զՄանրուսումն երգարան՝ վասն հոգւոյ որդւոյ իւրոյ Ցակոբայ քահանայի։

մի 1682՝ քարաշէն ասէ զկամուրջն կցորդիչ երկուց բերդից կամ բերդաւանաց, մին Մսիս, միւսն՝ որ յարեւելակողմանն՝ Քեաֆիր կամ Քուֆր-պինա կոչեցեալ, այսինքն անհաւատից չէն. յարեւմտեան գլուխ կամրջին կայր աւերակ դպրոցի, 'ի հանդիպոյ՝ բերդ եւ մզկիթ եւ իջեւանատուն եւ զօրանիստ. եւ համարէր տեղին մի յեօթանց իջեւանաց ուխտագնացիցն, եւ գերեզման հընդից մարգարէից. հաստատեալ էր անդ եւ բաժատուն, զոր յիշէ եւ Պօղ-Լուկաս յամի 1704, որպէս եւ զլինանելն այս քարաշէն կամուրջն. զայս՝ յետ երեսուներկու ամաց (1736) անանցանելի եգիտ Օդդէր ուղեւոր, վասն քակման միջին կամարացն. յափունս գետոյն երեւէին մնացուածք գեղեցիկ սեանց եւ շինուածոց, նշանակք մեծի քաղաքի։ Երեսուն ամօք եւս յետոյ (1766), Նիպուր ուղեւոր եգիտ վերստին շինեալ զկամուրջն, եւ զաւանն կարի բարգաւաճ, եւ հայ եպիսկոպոս կամ կաթողիկոս 'ի նմա, (զի պատրիարք ասէ)։ Որպէս գուշակի 'ի յիշատակացդ, նշանագոյն 'ի մնացորդս Մամեստիոյ է կամուրջն՝ բազում անգամ շինեալ եւ աւերեալ եւ վերականգնեալ, զորոյ մարթ էր յօրինել զպատմութիւն անցից իբրեւ զկենդանւոյ, մեռելոյ եւ յարուցելոյ։ — Այլոց վաղեմի շինուածոց Մոպսուեստիոյ նշմարին սակաւ հետք. որպէս, տաճարի միոյ նուիրելոյ արեգական՝ խարիսխք սեանց, յարեւմտակողմն քաղաքին. բաղանիք հռոմէական յարեւելակողմն՝ սակաւուք հեռի 'ի գետոյն, եւ մնացորդ ապարանից, առ որով եւ կամարակապ ստորերկրեայ յարկք. եւ 'ի հարաւակողմն բլրին՝ յորում այժմեան նոր քաղաքաւանն է՝ երեւին մնացուածք հռոմէա-




69. Մահարձան յունական 'ի Մսիս.

կան պողոտայի, խառն քարաշէն եւ աղիւսաշէն. երեւի եւ յատակ հռոմէական պողոտայի ժամու եւ կիսով ճանապարհի, եւ գերեզմանք վիմափորք. եւ սահմանաքար մի արձանագրաւ Աղեքսանդրի Սեւերոսի շինողի պողոտային. գտանին եւ բազում յունագիր կափարիչք տապանաց տեղափոխեալք յայլեայլ կողմանս քաղաքին եւ 'ի գերեզմանոցս [1], ընդ որս է եւ պատկերեալս աստանօր մահարձան յունագիր։ — Ի հարաւոյ Մսսայ մերձ 'ի կամուրջն 'ի բլրի են աւերակք բերդի, պարիսպք եւ աշտարակք։ Ապուլֆէտա արաբացի աշխարհագիր՝ յելս ԺԴ դարու կամ 'ի սկիզբն ԺԴին, յիշէ մզկիթ մի բարձր 'ի Մսիս, եւ զանուանի մուշտակս կամ մորթս գործեալս անդ եւ Մեսիսիէ կոչեցեալս։

Այժմեան աւանն Մսիս յաջմէ գետոյն կայ 'ի բլրի, 150 կամ 200 տամբք եւեթ, երիր մասամբ Հայոց, որոց եկեղեցի մի է փոքրիկ. իսկ 'ի նախնի եկեղեցեաց չերեւի ինչ կանգուն. կործանեալ կամ աւերեալ են եւ մահմետականաց աղօթատեղիք. եւ համանգամայն մեռելութեան քան կենդանութեան երեւեցուցանէ կերպարանս՝ երբեմն քաղաքամայրն անուանեալ եւ բազմահանդէսն Մամեստիա։

98. Նշանաւոր տեղի այժմ 'ի սահմանս վիճակին Մսսայ՝ թէ եւ աւերակ, է բերդն Շահի-մարան شاه مران, կամ Շէյխի մէրանն որ եւ Եղլանն գալեսի, զի երկոքին եւս զնոյն նշանակեն, Օձից-բերդ կամ Արքայ օձից. աւանդէ ռամիկն՝ անդ ժողովել օձից 'ի պատերազմ, կամ զլխաւորն նոցին անդէն առկայանալ. ըստ այլոց, հրէշ մի էր անդ օձամարդ, որոյ կամեցեալ յափշտակել զդուստր թագաւորին՝ խեղդամահ եղեւ 'ի բաղանիս Տարսոնի [2]։ Գըտանին արդարեւ յաւերակսն օձք եւ մողիզք, այլ ոչ առաւել քան յայլ նմանակ տեղիս։ Ըստ այլ ինչ գրաւոր աւանդութեան Թուրքաց, օձապաշտ ոմն կամ Թովիչ՝ Շէյխ Միրան անուն՝ ընտրեաց զտեղին 'ի բնակութիւն, եւ յայնմհետէ անդր դիմէին օձք։ — Եօթն մղոնաւ չափ բացակայ է բերդն 'ի հիւսիսոյ Մսսայ, 'ի բարձու կրային քարաժեռի, զոր կորեալ Ջահան գետոյ՝ զատուցանէ 'ի չորից այլոց լերանց, յաջակողմն իւր զնա թողլով. առ ստորոտովն նշմարին հետք մեծի շինի, եւ կիսաւեր եկեղեցի. նշանակք կարեւոր ինչ տեղւոյ, որպէս եւ բերդն հզօր. զորոյ ոչ կարացի ստուգել զանուն կամ զպատմական անցս։ Յարեւելակողման դիմի քարալերինն՝ են մուտք բերդին եւ ելք ճանապարհի, յորոյ վերայ երեւին տեղիք ամրութեանց եւ դռնաձեւ շինուածք՝ մինչեւ յաւագ դուռնն. առ որով կանգնին երկու բոլորշի աշտարակք, եւ 'ի վերայն նշանակ թեւաւոր առիծուց։ Արտաքին պարիսպքն բարձրաբերձք մինչեւ 40 Զ. մեծամեծ կոփածոյ վիմօք՝ ահեղ իմն երեւին. այլ ներքին տեսիլն ոչ նոյնպէս. զարեւելից կողմն՝ հաւասար նոցին բարձրութեան պարսպէ քարակտուր մի սեպացեալ։ Յաջմէ դրանն սանդուղք հանեն յաշտարակն մեծ. յահեկէն՝ բացագոյն՝ կան ջրամբարք վիմափորք. յարեւմտակողմն՝ երեք կիսաբոլոր աշտարակք. 'ի ծայր հիւսիսակողմանն է բարձր աշտարակ քառակուսի՝ վիմահատ սանդղօք ելանելի. նոյնպէս եւ յարեւելեան կողմն են շինուածք ինչ մարտկոցաձեւք 'ի վերայ քարաժեռից. կայ եւ եկեղեցի մեծ վիմափոր, այլ թուի անկատար մնացեալ փորածոյն։ Նմանագոյն երեւեցաւ քննողին բերդս այս՝ Անաւշայ բերդի. եւ նշանաւոր ոճ շինութեանն՝ կրաշաղախ եւ աղիւսախառն հիւսուածով, որ ոչ ցուցանէ չատ հնութիւն։ Քոչի՝ որ յայց եղ տեղւոյս յամի 1859 (29 ապրիլի) ետես ի գ[illegible]րուկսն Շան-ձուքծաղիկ (Orchis) գեղեցիկ, այլ [illegible] փութոյ դարձին ոչ ժամանեաց քաջ հետազօտել, միանգամայն եւ

[1] Լանկլուա հրատարակեալ է 'ի Ճանապարհագրութեան իւրում, յէջ 453-7. մեզ աւելորդ թուեցաւ ընդօրինակել, զի չկան 'ի նախնի կայի իւրեանց, եւ զի յոյժ օտարք են 'ի մերմէ ազգային տեսութենէ։

[2] Նոյն ինքն Լանկլուա եւ զայսոսիկ լուեալ՝ աւանդէ։

առ ահի Հայուն Վրդաց Թափառելոց զվայրօքն, Թշնա֊
մութեամբ գոլով ընդ Սարգանդ-օղլու Թուրքմանաց և
ընդ Պօզան տոհմի։ — Ի բնակիչս և 'ի Թափառողս կող֊
մանցս՝ նշանաւոր է և տոհմ մի սևամորթ, բնակեալ յեր֊
կուս գեօղս, յարևմտեան ստորոտս լերանց Մասայ, բա֊
րեմոյն բարուք և հաստատուծով. որոց ոչ է յայտ ժամա֊
նակ գալստեանն, այլ յետին այցողք կողմանցս [1] կար֊
ծեն՝ ընդ բանակին Իպրահիմ փաշայի եկեալս յեգիպ֊
տոսէ։ — Նորեկք քան զսոսա են Եգերացիքն սփռեալք
'ի բազում գեօղս շուրջ զլերամբ Օձաբերդին, ընդ հիւ֊
սիսի և ընդ հարաւ և ընդ արևելս, և գլխաւոր նոցին
աւանացեալն Իսմայէլ-պէկ քէօյ, յարտաքին ծագ ար֊
մրկան միոյ Ջահանայ՝ յահեկէն. բնակարանքն ձգին ընդ
մղոնաչափ երկայնութիւն և առաւել ևս, հանդերձ ա֊



70. Շահի-մարան (Օձից) բերդ.

կաւ կրպակօք, իշևանատամբ, և բարձր սպիտակ աշտա֊
րակաւ մզկթին՝ որ քաջ 'ի հեռուստ տեսանի. է անդ և
զոմ անցից ընդ գետն։ Մասն մի բնակչացն սերունդք
են Նողայի ցեղի Թաթարաց, չիկահերք, բարձրայարք և
Թաւայօնք. մշակեն հանդերձ այլովք և բամբակ շատ.
վասն որոյ փռանկ ոմն հաստատեալ էր անդ գործարան
զտելոյ զհատս բամբակի. և այսու միանգամայն կակղէր
և զբարս եկամուտ բնակչացն, զկրամոքս զտանելով

[1] Ֆավր և Մանտրոյ (յէջ 45). որք և մեղադրեն զԼանկլուա՝ զի վայրաղս ոմանս և խուժադուժս նկարագրէր զնոսա։

զՆողայս քան զՆգերացիս. զի նոքա թէ յԱստուծոյ ոչ երկնչէին, սակայն երկնչէին գոնեա 'ի սատանայէ, իսկ սոքա ոչ յԱստուծոյ և ոչ 'ի սատանայէ: — Ընդ մէջ Շահի-մարան և Թումլու բերդից՝ յիշատակի և Գուլաս գալէսի (Գալլաբերդ), թէպէտ և չէք անդ յատուկ բերդ, այլ մեծ և ամուր իջեվան կարաւանաց, բաւական 'ի պատսպարել 2000 ոգիս՝ հանդերձ գրաստուք նոցին, շինեալ՝ որպէս ասի՝ 'ի Սուլդան Մուրատայ Գ, յամի իբր 1580, որձաքար վիմօք, 30' բարձր պարսպօք: Աստանօր ապաստանէր առ մեօք Մըսըրց պէյ. զորդիս լքեալ է տեղին և մերձ 'ի խանգարել[1]:

Ցարևելս հարաւակողման Մասայ նշանաւոր տեղի է 'ի կոչս Ճէպէլ-Նուրի նախայիշեալ ուխտատեղին Տաճկաց՝ Ճևաֆար-տէտէ, յանտառամիջի ազգ ազգ կաղնեաց, բևեկնեաց, մոշայից և սօսեաց, որ տարածի ց'25-30 մղոնաչափ, և 'ի հարաւոյ կուսէ զրեաթէ մինչև 'ի ծովեզերս, և կոչի Պուզ-աղաճ կամ Պօզ-աղաճ. երեք լերինն 'ի հարաւոյ ուխտատեղւոյն՝ ծածկեալք են սաւարաբուն կաղնեօք (4-5' շրջապատութեամբ), և առ ստորոտովն են գերեզմանք յոլով, զի իբրև 'ի վայր սրբազան անդր ածեն զմեռեալս 'ի շրջակայ գիւղօրայից: Ի բարձունս լերինն՝ յոտն մի քարաժեռ՝ նշմարին մնացուածք մեծի բերդի: — Ի խաղս գետոյն ճարակին երամք վայրի բադից և սագուց, և կինձք ղօղին: — Ի միջոցի Ճէպէլ-Նուրի 'ի հարաւոյ և Հաւտէ լերին 'ի հիւսիսոյ՝ են նորաշէն գեօղք եկաց, որպէս 'ի հիւսիսակողմն յահեկէ գետոյն Ջահանայ, յորոց միջի մերձ 'ի կցուածս երկոցուն յիշեալ լերանցդ՝ 'ի մեկնակ որածայր քարաժեռի՝ յերից կողմանց անմատոյց ամբառնայ Կուզայ-օղլու կոչեցեալ բերդ, որ ոչ գիտեմ որպիսի ինչ էր 'ի հնումն. զուցէ յանուն հին քաղաքին Կաւալայ, Κάβαλα, զոր յիշէ Ապպիանոս 'ի պատմութեան գործոց Միհրդատայ. և զոր ոմանք նոյն համարեցան ընդ Կաստաբալայ. զորդիս Նգերացիք Մուսքու կոչեցին զայն, արդեօք 'ի յիշատակ Մոսկովաց հալածողաց իւրեանց 'ի հայրենի լերանցն: — Ցարևմտից բերդիս սակաւուք 'ի բացէ՝ ընդունի Ջահան գետակ մի եկեալ յարևմտից յանկրպետաց գաւառացն Ատանայ և Մասայ: — Ցահմէ Ջահանայ քննելի են նշանակեալքն 'ի քարտս՝ հայանուն գեօղք Գաւթիշէն և Թրքիշէն:

99. Ի խորշս ուրեք անտառիդ յիշեցելոյ կամ 'ի ծմակս լերանցն՝ խնդրելի համարիմ զեպիսկոպոսական աթոռ և կալուածն Մասայ, որ և մի 'ի հռչակապանծ վանորէից է Սիսուանայ, անշուշտ յանուն ծառոց՝ յորոց 'ի միջի ծածկէր՝ կոչեցեալ Արքայկաղնի վանք. Ինճիճեան մեր Հայր կարծէր զայն՝ ըստ ասից միաբանից ոմանց Սսոյ՝ մերձ այնր քաղաքի լինել, բայց այլ վանս համարեալ զայն յիշեցաք 'ի տեղագրի կողմանն. իսկ սա հանգոյն հռչակագոյնն Դրազարկի՝ վաղ ուրեմն անծանօթացեալ է՝ գէթ առ 'ի մէնջ. թէ և դարու յառաջ (1772) Գաբրիէլ ոմն վարդապետ՝ կարծեմ 'ի միաբանից Սսոյ, (եղբայր Սարգսի քաջ բարունապետի, որպէս ասէն), գրէ իբրև զծանօթ տեղւոյ՝ չափական տողիւք.

« Գաբրիէլ պետս իմոյ անձին,
Հազար երկու հարիւր քան մին,
Ցամառանոցն Արքայկաղին ».

այլ ոչ յայտնէ որոշակի զզիրսն: Ոչ է յայտ սկզբնաւորութիւն վանացս, բայց յիշի և 'ի կէս ԺԲ դարու, յորում՝ յամի 1167 անդ հանգուցաւ խարշատեալ դիակն Ստեփանէի՝ հօր Մեծին Լևոնի, ըստ ասից Վահրամայ,

« Մարմինն 'ի հող երկրի մըտեալ,
ՑԱրքայկաղնին ուխտ անուանեալ»:

Կոչէր մենաստանս այս և Խճկտոր (Թուի Հաճկատար), յորմէ զուշակի և եկեղեցւոյն նուիրեալ գոլ Ս. Աստուածածնի, զի սովորաբար Տիրամօր ընծայի մակդիրն Հաճկատար. այս մականուն տեղւոյս լսի 'ի յիշատակի Թաղման Գրիգորի Ապիրատի կաթողիկոսի՝ յամի 1203. որոյ եկեալ 'ի Հռոմկլայէ 'ի Սիս՝ խնդրել յարքայէն Լևոնէ զազատութիւն Հեթմոյ-Հեղեայ՝ յետ սակաւուց վախճանեցաւ անդ, և «դնի 'ի սուրբ Խճկտոր, զոր Ուխտն Արքակաղնին» կոչեն: — Ցայսմ ժամանակի առաջնորդ ուխտին՝ որ և արքեպիսկոպոս Մամեստիոյ՝ էր Տէր Դաւիթ, առաջին դասեալ ամենայն եպիսկոպոսաց՝ յիշեցելոց 'ի հանդիսի թագադրութեան Լևոնի. կամ՝ զի տակաւին Մամեստիա մայրաքաղաք համարէր Հայոց, և կամ զի յետ սակու ամաց ամբարձաւ Դաւիթ 'ի գահ կաթողիկոսութեան, 'ի մերժել թագաւորին զԴ. Ցովհաննէս, և սա 'ի սեփական աթոռ եպիսկոպոսարանին նստաւ Դաւիթ զերկուս կամ զերիս ամս (1206-8) հայրապետութեանն, և կոչի յատկաբար Արքայկաղնեցի: — Թերևս յառաջ քան զսորայս ժամանակ կեայր անդ Պօղոս ոմն կրօնաւոր, որոյ խնդրելով զներբողեան Ոսկիբերանի կամ զԹէոփիլոսի 'ի Ս. Գրիգոր Լուսաւորիչն՝ զթարգմանեալն 'ի Թէոփիստեայ, եգիտ «'ի սուրբ
» վանքս Արքայկաղնիս ... (և եդ 'ի նոյն) 'ի ճոխակայ
» մայրաքաղաքացեալ սուրբ անապատս Արքայկաղնիս »: Ցետ կիսոյ ԺԳ դարու՝ յամի 1266 Թորոս քահանայ ազգակից Ա. Կոստանդեայ կաթողիկոսի, գրեալ աւետարան մի՝ նորին հրամանաւ՝ ետ ընծայ «'ի սուրբ ուխ-
» տըն Արքակաղին կոչեցեալ, 'ի ձեռն Տէր Սիմոնի ե-
» պիսկոպոսի. և խնդրեցի (ասէ) 'ի նմանէ, զի 'ի յիշա-
» տակ Նախավկային՝ զպատարագն իմ ծնողացն և հօ-
» գևոր տիրոջն և ինձ մատուսցէն»: Ցետ այսր յիշի աստ Վարդան Կողեան և չարման (չարման՝ ըստ բնագրին), ստացող գրոց՝ որդի Ղազարայ, Մովսէս սրբասէր քահանայ և ճգնաւոր միակեց, Գրիգոր քահանայ մականուն Պետրոս խնդրող գրոցն, և Նիրսէս գրիչ, որ և հայցէ յիշել «զամէն եղբայրութիւնս հրեշտակաբնակ
» ուխտիս Արքակաղնոյս, առ հասարակ զմեծ և զփոքր»: — Ի մեծի սասանութեան երկրի 1269 ամին՝ սաստկապէս վնասեցաւ և մենաստանս. ընդ որ առաւել իմն քան ընդ այլոց տեղեաց վտանգն՝ ցաւագինս գոչէ ժամանակակից ոմն[2]. « Տա՜յ բանիս. և որ կարի վշտալին է, քան-
» զի զերահռչակն ուխտ՝ Արքակաղինն անուանեալ, և

1 Տե՛ս, Davis, 70.

2 Գրիգոր գրիչ աւետարանի յուխան Անդրիասանց: Տես յէջ 150:

» որ ընդ վիճակաւ Նորա բազում աղօրանոցք և մենա-» ստանք, առ հասարակ 'ի վայր խաղաղացին։ Նա անդ » էր տեսանել արժանի ողբոց պատահումն, և լսել ա-» կանջաց դառնութիւն. վասն զի ոմանք 'ի հեծիւն, և » այլք 'ի հառաչ, կէսք 'ի ճիչ, այլք յողբս, և ... զայսո-» սիկ մեք իսկ տեսաք աչօք մերովք»։ Թէ վերական-գնեցաւ 'ի կործանմանէն, ոչ կարեմ հաստատել ստոու-գիւ, զի ոչ ևս գտանեմ յետ այնր յիշատակ Թուական-նաւ, թէ և կարծեմ Նորոգեալ։ Տխրական հառաչանք ժամանակագրին՝ վաղ ուրեմն լռեցին. այլ փոխանակ այնր՝ քաղցր եղանակք ձայնից անապառ մնացին 'ի սուրբ մենաստանէս. քանզի աստանօր, ոչ գիտեմ յորմէ՝ ճար-տարէ, հնարեցան քաղցր և բազմազրուագ եղանակք մեղեդեաց և նմանեաց երգոց ժամասացութեան, որ յատկապէս Մանրուսմունք կոչին, ևս և կցուրդք, հան-դերձ համօրէն երգովքն. և գտանին ոչ սակաւ օրինակք յայլևայլ վանորայս աշխարհիս Սիսուանայ գրեալք, հա-մայն գեղեցիկ գունագոյն և ոսկենկար զարդուք. և յո-լովից յայնց յիշատակագիրք վկայեն՝ այս օրինակ բա-նիւք, եթէ, «Գրեցաւ եղանակաւոր տառս՝ որ կոչի » Մանրուսումն 'ի լաւ և յընտիր օրինակէ... զոր յար-» մարեալ էին երաժշտասէրք Արքակաղնոյ». կամ ըստ նմանագրելոյս այսմիկ, յորում ոչ միայն երաժըշ-տասէրք՝ այլ և երաժշտապետք կոչին երգահանքն այ-նոքիկ. անշուշտ երջանկագոյն և անդորր աւուրց հան-դիպեալք, զհոգեղէն նուագսն ընդ յօդականացն զու-գաւորելով՝ յանգբաղ միայնարանսն, ընդ հեզասաղարթ կողերօք քաղցրապտուղ արքայական-կաղնեացն, յորոց և մենաստանն զկոչումնն ընկալաւ։ Շատք յերգոցն ոչ

Բայց գրեցաւ յընտիր ևս
տոյգ արմնակաց որկյար
մարած առաջին երաժշտ
տապետաց մեծանուան
առոր ուխտին արքակաղ
նոյն. աղաչեմ յընթերցողա
դ [illegible]
զիկար մեր այսէր :—Գ

71. Մանրուսումն գրեալ յԱրքայկաղնի վանս.

միակի՝ այլ բազմազան եղանակօք նշանակին, այլևայլ խազիւք և նշանակօք, և 'ի լուսանցս իջիցն գրին պէս-պէս աղուական անուանք եղանակացն, աւելի քան զեօթանասուն. զոր 'ի զբօսանս բանասիրաց կարգես-ցուք աստանօր, դասաւորելով ըստ այբուբենից. այն ունելով թէ 'ի հնագոյն օրինակս այսպիսի գրոց՝ գտցին արդեօք և անուանք նուագապետացն այնոցիկ և երա-ժըշտասիրաց. որոց արուեստ՝ բաւական էր՝ կարծեմ՝ հռչակաւոր առնել զանխլացեալն այն արդ առ 'ի մէնջ վանս Արքայկաղնոյ։

Անուանք եղանակաց Մանրուսմանց

| | |
|---|---|
| Աղաչանք | Հովիւ |
| Աղաւնեակ | Հօրնձին, Հօրձին, Հօրնձէն |
| Անմեղուկ | Ջագ |
| Անձեղ *կամ* Ջիտ | Ճիչկան *կամ* Ճչող |
| Արծիւ | Մակեդոնացի |
| Առւօտ-երգ | Մամկոն |
| Աչկերտն | Մատնակն |
| Այսօր-մտանէ | Մատն |
| Աւեղն *կամ* Ցօնեղ | Մեղուն |
| Գաբբիէլ | Մլեցի |
| Գայլ | Ցետաքարլ |
| Գզած | Շնորհազարդ |
| Գոննակ | Ովէսայն |
| Գոյնիկ | Ուղտն |
| Գոռուզ | Ջորուկ. Ջոր |
| Գուսնակ | Ջանրիկ |
| Դալրուկ | Ջուլանակ |
| Դարբին | Ռանուվար *կամ* Ռամվար. Ռըմվար |
| Եկեղեցւոյ | Սայլ |
| Ջօնտող. Ջոնտող | Սարկաւագ |
| Թագաւորն | Սերոբէ |
| Իրիցկին | Սուրբ-Նշանեցի |
| Լալկան | Ստեղն |
| Խաբուսիկ | Վարսեղն |
| Խեղէփ | Վռզտատիկ, Վռզտատէք(Աղաւնի) |
| Խօսող | Տանուտրակ |
| Ծովցի | Տարածումն |
| Կաղ | Տարօնեցի |
| Կատու | Տժգոյն |
| Կարմիր-վանքեցի | Տօկատն *կամ* Տուկատ |
| Կիրակոս երէց | Տոպտօպայն |
| Կոզեռն | Ցինայն |
| Հաւատվոր | Փող |
| Հիւանդ | Փորակն |
| Հոռոմն | Քնքշակն |

Թէպէտ և ոչ կարեմ հաստատել, այլ հաւանական ինձ թուի թէ յայսմ մենաստանի (եթէ ոչ 'ի համանմանում) խօսեցաւ Յովհան Երզնկացի՝ «զԱստուածն 'ի բան ծի » Սաղմոսի՝ որ ասէ, Տէր կարդացի առ քեզ». (որպէս և էր Նորա և յայլ բազում եկեղեցիս և վանորայս Կիլիկից խօսեցեալ ճառս, հրաւիրմամբ տեսչացն). «Հաչակա-» ւորս այս տեղի և յականութիւն յոլորտս տիեզերաց » մենաստանս մեծ, մաքրակրօն և մարմնապար հրե-» տակօք լցեալ, 'ի բարձրութիւնս ծայրից լերանց դե-» րախտ Աստուծոյ ... ձիթենիք պտղալիցք 'ի տանն Աս-» տուծոյ տնկեալք, և օծմամբ Հոգւոյն Սրբոյ պարարտա-» ցեալք, լուսանիւթ պտղովք առաքինութեանցն լցեալք » նռնենիք պարարտապտուղք ըստ կարծր կեղևոյ կեղե-» քեալք և չարչարեալ մարմնոյ դեղնութեան ծաղկեալք » բազմահոյլ հատից հոգեկան մասամբք բուրեաց հրա-» գունակ որակօք Հոգւոյն ներկեալք. խնձորենիք կար-» միրաբերք 'ի փայտից անտառաց մարդկութեան մեր-» ցէս բուսեալք, եղբօրորդւոյն գովեստիւ պատուեալք...

» վարդք կարմրերփեանք 'ի սէրն Աստուծոյ վառեալք. » մանուշակք մաքուրք՝ անուշահոտութեանն Քրիստոսի » բուրիչք, շնորհալի շուշանք ճգնողական վարուք ողջա֊ » խոհացեալք. երկրքումք քաջազօրք, կուսութեանն » պատկառանօք պարկեշտացեալք: Ցաղագս որոյ ցան֊ » կալի է յոյժ և բաղձալի ձայն համբաւոյ ձեր, և զը֊ » ւարթարար տեսութիւն:.. Ես ես գոհանամ, զի զոր 'ի » լուր ականջացս լուէի, և այժմ դէմ յանդիման աչօք » իմովք տեսի, և զքաղցր եղանակս ձայնից ձերոց յօր֊ » հնութիւնն Աստուծոյ լուայ, և իբրև 'ի հոտ անուշից » խնկոց՝ 'ի նուէրս աղօթից ձերոց զմայլեցայ. վասն ո֊ » րոյ յօժարի բերան իմ պատմել զխմաստութիւն, և » խորհուրդ սրտի իմոյ՝ զհանճար ոգւոց ձեր հրատարա֊ » կել»: Այսքիկ 'ի յառաջաբանին. իսկ 'ի վերջաբա֊ նին յաւելու. «Հարցն առաջնոց և սիրելեացն Աստու֊ » ծոյ և սրբոց՝ գոլով համակարգ և համաձևք, և նո֊ » ցունց դասի և կայանի փափագողք և փութացողք», և այլն:

100. Ի պատմութեան Խաչակրաց և 'ի դիւանս լատին իշխանաց արևելից՝ յիշին 'ի սահմանս Մամեստիոյ տե֊ ղիք և դէպք ինչ, 'ի ժամանակի՝ յորում վիճակս այս տա֊ կաւին չէր հաստատեալ ընդ ձեռամբ Ռուբինեանց, այլ բռնաբարիւր 'ի հզօրաց, և 'ի նոցին իսկ աւագաւէր իշ֊ խանաց. որոց գլխաւորքն Պալտին և Տանկրետ, որպէս տեսաք, 'ի սկզբան գալստեան իւրեանց յերկիրս յայս՝ ընդ պարապօք քաղաքիս բաղխեցան ընդ միմեանս: — Մերձ 'ի Մամեստիա էր և տեղին կոչեցեալ յԱրաբաց Մերճ-էլ-Տիպաճ, և 'ի Լատինաց՝ Pratum Palliorum, որ թարգմանի Մարգ Դիպակաց կամ Պատմուճանաց, ուր յամի 1133 Պեմունդ Բ Բրինձն Անտիոքայ՝ մարտու֊ ցեալ ընդ Ռէտուանայ ամիրայի Հալպայ՝ թէպէտ և վա֊ նեաց, այլ վիրաւորեալ մեռաւ: — Յիշի և գեօղ մի Սա֊ րատա, Sarata, անուն, զոր Անտիոքացիք պարգևեալ էին Ասպետաց Հիւանդանոցին, և Պեմունդ Գ. երկիցս հաստատեաց զնոյն պարգև, յամս 1149 և 1163[1]: — Հնագոյն ևս պարգևագրով՝ Զեչիլիա տիկին Տարսոնի, քոյր Բ Պալտինի թագաւորին Երուսաղեմի, նուիրեալ էր վանաց Ս. Աստուածածնի որ 'ի Ջորն Յովսափատու՝ յԵրուսաղէմ, գեօղս ինչ յերկրէն Մամեստիոյ, յորոց մին անուանի Joacheth, Ճուագեր կամ Եուգեր, ամենայն սահմանօքն, միւս Oessi, Օեսի? (Օձի?), յայնկոյս գե֊ տոյն Ջահանայ, (որ Joannes գրի 'ի Պարգևագրին)[2]: Առաջնոյն մերձաւոր անուամբ գտանի 'ի յիշատակա֊ րանս գրոց՝ Ճոխաթու վանք, յորում աւետարան մի գրեալ յամի 1250, առ թագաւորութեամբ Հեթմոյ Ա և Կոստանդեայ կաթողիկոսի. այլ զի ընդ սմին յիշի և կաթողիկոսն Ասորւոց, հաւանագոյն թուի լինել վա֊ նացն 'ի սահմանս Եփրատացւոց և Հռոմկլայի[3]:

1 Paoli, I. 27, 38.

2 Ego Cecilia Domina Tharsensis, scilicet soror Regis Jerosolimorum... dono et concedo ..., casalia in territorio Mamistre, quorum nomina sunt hec, *Joacheth* scilicet cum omnibus appendiciis suis ; terram quoque duarum carrucatarum in *Tilio*. Aliud etiam casale nomine *Oessi*, quod est ultra flumen, quod vocatur Joannes, etc. Էին թերևս այլ ևս գեօղք նշանակեալք, բայց զայսչափս միայն գտի ընդօրինակեալ յիտալա֊ ցի երիցուէ միոջէ՝ որոյ գրեալ է զՊատմութիւն Ատանայ քաղաքի, յամի 1842, այսու վերնագրաւ. Adana, città dell'Asia Minore. Monografia del Sacerdote Niccolò Maggiore. — Palermo, 1842.

3 Գրիչն Յոսափ գովէ զուխտն, կոչելով, «Յոյժ հռչակաւոր և » բազում զարդարանօք պայծառացեալ, քահանայիւք և սարկաւա֊ » գօք և դպրօք. նմանեալ անմարմնոցն՝ կրօնիւք և վարուք և աղ֊ » քատութեամբ, որպէս 'ի Տեառնէ առեալ պատուէր»:



72. Թումլու բերդ. (Տես յէջ 244).

# Բ. ՀՈՎԻՏ ՍԱՐՈՍԻ

## ԱՏԱՆԱ

101. Միութեամբ երկոցուն առաջնոցն (Սիհուն և Ջագըտ) վարարեալ Սարոսի, միջին գետոյ Կիլիկիոյ, խաղայ ուղղակի 'ի հիւսիսոյ ընդ հարաւ փարախս ինչ, ապա դառնայ ընդ Մ. Մ. Հր., և այնու ուղղութեամբ հատեալ մղոնս երեսուն, աւելի կամ պակաս, թափի 'ի ծով, ընդմիջելով զընդարձակածաւալ զամենաբեր դաշտըն Կիլիկիոյ. արգասաւորութեամբն նախանձելի արդեօք և գերագոյն քան զյոլովս 'ի մասանց երկրի, եթէ բարեխառն ունէր և զկլիմայն. որ' 'ի հակառակէն յոյժ տօթագին է և անհամբոյր ամարանի, և երկիրն զուրկ 'ի հովանեաց տարրոսական բարձանցն. վասն որոյ և զմեծ մասն մի տարւոյ' կարօդք 'ի բնակչաց շինիցն' խոյս տուեալ ելանեն 'ի հովոցս լերանց, և կարաւանք անցաւորք' գիշերայն ճանապարհ հորդեն ընդ դաշտն: Մի 'ի հովոցացն կամ արօտից' Այաշխանեու եայլա անուամբ յիշատակի 'ի գրուածի ուրեք յամի 1674: Հարկ է թէ առաւել ծառաւէտ գոլով 'ի հնումն' շինաշատ և մարդաշատ ևս էր միջոցս այս կամ գոգ Կիլիկիոյ. ուր զարդիս յաւէտ թափառին Թուրքմանք և Աֆշարք վրանաչուք' խաշամբք իւրեանց, ցորչափ ներեն եղանակ և զալարիք դաշտաց' դեգերել 'ի նոսին: Փոխանակ մայրեաց և մրրգաբեր ծառոց աճեն յոյժ առատութեամբ 'ի դաշտին Ատանայ' Եղջերենիք (Caratonia siliqua), Կոզիք (Acacia), Քապրցախ (Capparis spinosa), երկու տեսակ Ռոբինիա (Robinia)[1]. թանձր բոյսք և ծաղկունք շատ, և պատուականագոյն բնաւից' Բամբակն. գտանի և Արմաւենի և Շաքարենի: Ի կենդանեաց սեռէ ընտրելագոյնք են այծեմնիկքն և արօսք մեծ և փոքր:

Կենդրոնական դիրք Ատանաց այժմեան մայրաքաղաքի Կիլիկիոյ, յոր անուն կոչի մեծ կուսակալութիւն մի Օսմանեան պետութեան أذنه, պահանջէ շուրջ զիւրեաւ հոյլս գեօղից և աւանաց. և նշանակին իսկ 'ի քարտս յիմնիւ չափ անուանք գեօղից, երկուստեք Սարոսի, այլ հանգամանք նոցին անծանօթ են մեզ. վասն որոյ ստիպիմք և աստ' ուշ ունել միայն քաղաքին, որ երբեմն կրսեր և յետին քան զայլս' արդ զառաջնութիւն ունի բնաւից 'ի Կիլիկիայս, զրիւքն ևս առ այս քաջ պատշաճելով, զի իբրու 'ի միջավայրի կայ համօրէն Կիլիկիոյ, ընդ 37° լայնութեան, և ընդ նովին միջօրէիւ Մսայ, իբրև 15 մղոն յարևմտից սորին, և 20 յարևելից Տարսոնի, 25 'ի ծովէ, 30 'ի պահակէն Կիլիկիոյ, նոյնքան կամ սուղ աւելի և յԱնազարբայ, և իբր 40 'ի Սսոյ, իմա ուղիղ գծաւ. և կայ յաջմէ կողմանէ գետոյն, 'ի տեղւոջ' ուստի զհարաւադէմ ընթացսն դարձուցանէ Սարոս ընդ արևմուտս հարաւոյ:

Ատանա չէ ծանուցեալ 'ի հին ժամանակս, զէթ այսու անուամբ, և հազիւ կիսով դարու յառաջ քան զԹուական Փրկչին յիշի անունն, զառաջինն 'ի Միհրդատեան պատերազմունս. թէ և ասացին ոմանք 'ի Բիւզանդացւոց, ըստ առասպելաց' յԱտանեայ ումեմնէ որդւոյ երկնից և երկրի շինեալ, կամ ևս աղուաբար' յԱդամայ 'ի նախահօրէ մարդկան. այլք համարին զԱտան 'ի փիւնիկ լեզու նշանակել ուռենի, զի քաջ աճէին ծառքս զեզերբք Սարոսի. և ոմանք ասացին զԱտանա և զՍարոս լինել զօրավարս, և յանուն նոցին կոչել գետոյն և զքաղաքին. որ և ըստ ոմանց կոչէր զառաջինն Կիրանոս, Κίρανος. Համարի կոչեցեալ ևս Անտիոքիա առ Սարոսիւ, ΑΝΤΙΟΚΕΩΝ ΤΩΝ ΠΡΟΣ ΤΟΙ ΣΑΡΟΙ, Antiochia ad Sarum, 'ի պատիւ Սելևկիացւոց Անտիոքեան թագաւորաց' յԲ դարու նախ քան զՔրիստոս. որպէս և յետոյ 'ի պատիւ Մաքսիմիանու կայսեր' բնակիչքն կոչեցան ('ի դրամս) Մաքսիմինեան Ատանեանք, ΜΑΞΙΜΙΑΝΩΝ ΆΔΑΝΕΩΝ. Հնագոյն դրամք քաղաքին' մինչ յազատութեան էր' յանդիման առնեն զնոյն' կերպարա-



73. Հին դրամ Ատանայ.

նաւ դիցուհւոյ և յաղթակիր Արամազդաւ, որպէս երևի 'ի պղնձեայս յայս: Պոմպէի Մեծի նախ բնակեցուցեալ յԱտանա զմասն գերութեան ծովային հինիցն, և ստիպեալ զնոսա 'ի գործ մշակութեան երկրի, յետ այնր ընդ հռոմէական քաղաքս դասեցաւ և խնամեցաւ, այլ ոչ ընդ առաջնակարգս. թուի թէ և ասպատակ խառ-

[1] Այսպէս կոչեցեալ է բոյսն այն յանուն J. Robin բուսագէտ դեղագործի թագաւորին Փռանկաց՝ ԺԴ Լուդովկէի:

բանցեալ՝ ոչ ներէր նմին բարգաւաճել, զի և չունէր ամրութիւնս՝ ըստ այլոց քաղաքաց մերձ 'ի լերինս կառուցելոց. վասն որոյ և անարգել յարձակեալ՝ աւերեցին զնա յերկրորդ կէս Դ դարու, մինչև աւան կամ գեօղաւան կոչել նմա 'ի յայն արձանագիրս ժամանակին, Κώμη 'Αδανέων [1]. ապա 'ի հանդարտել բանադրութեան աստուածային, կայսրն Յուստինիանոս 'ի Զ դարու՝ ետ յարդարել և զայս քաղաք, և շինել կամուրջ մի հաստահիմն, խոտորեցուցանելով զընթացս գետոյն, և անդրէն դարձուցանելով յատակին հունն. յորոյ և 'ի խարխաց կամրջին մնաց սակաւ ինչ նշխար: Աւելորդ է կրկնել՝ զի ըստ այլոց քաղաքաց Կիլիկիոյ և սա զփորձ էառ հաբունեաց մարտի և հարստահարութեան Բիւզանդացւոց և Արաբաց. սոքա առին ամայի գտեալ զայն, և Հարուն-էլ-Ռաշիտայ և որդւոյ նորին շինեալ և զարդարեալ զղեկուս, խրամով, պարսպաք և ուժ դրամիք: Աշխարհագիրն Իստախրի 'ի կէս Ժ դարու՝ յոյժ բարգաւաճ ցուցանէ զԱտանա, թէ և կիսով չափ փոքր քան զՄսիս. նոյնպէս աւէ և Իտրիսի՝ յետ երկուց դարուց, որ է 'ի սկզբան պայազատութեան Թորոսի Բ, ծաղկեալ արուեստիւք, շահավաճառութեամբ և բազմութեամբ եկաց: — Ոչ բազում ամաց յառաջ քան զգալուստ Խաչակրաց (1071-2), 'ի մեծ կոտորածէն Մանազկերտու և 'ի գերութենէն արգեալ Ռոմանու Դիոժենի կայսեր, եկեալ



74. Ատանա, նոր մայրաքաղաք Կիլիկիոյ.

էր յԱտանա, ուր լուաւ զԹագաւորել Միքայէլի Տուկիծի, և զգալուստ կուսակալաց նորին առ ըմբռնել զինքն.
« Իսկ Դիոժենն առ վտանգին իւր զգեցաւ զգեստ աբեղայի. և եկեալ առ զօրավլութին Հառուեց՝ որ էր եղբայր Տուկիծին, և ասացեալ, Ահա չունիք յինէն այսուհետև հոգս. վասն զի ես յայսմհետէ 'ի վանք կրօնաւորաց կամիմ բնակել. ձեզ Թագաւոր լիցի Միխայլն, և Աստուած եղիցի ընդ նմա [2]»: Այլ ոչ եղեն լսելի աղաչանքն. խաւարեցուցին զաչս նորա, և 'ի ցաւոցն մեռաւ: — Յառաջին արշաւանին Խաչակրաց՝ յամի 1097 Կունկրի Բուրգոնդիացի կորզեաց զԱտանա 'ի ձեռաց Թուրքաց, և եգիտ 'ի նմին ոսկի և արծաթ և պարէն բազում. այլ Թողեալ յետ սակաւուց 'ի Յոյնս՝ անդրէն Թափեաց զայն Տանկրետ, և յորեաց յիշխանութիւն Անտիոքայ, զոր առեալ էր իւր բաժին: Պատմիչք Խաչակրացն կոչեն զԱտանա՝ ամուր և աշտարակազարդ, մարդալից, ոսկւով և արծաթով և ամենայն պարարտութեամբ լցեալ [3]. և ոմն 'ի նոցանէ՝ զայն ժամու իշխան քաղաքին անուանէ Ոշին, որ էր հաւանորէն տէրն և տոհմապետ Լամբրոնի, և երկար ճառս ճառմարանս արկանէ 'ի բերան նորա, որպէս թէ 'ի լերինս բնակելով իւր զառաջինն, հնարագիտութեամբ և քաջու֊

1 Թերևս յայսպատակէ այնմ խոյս տուեալ էր 'ի Տրեւս (Trèves) քաղաք Գաղղիոյ՝ ծնօղաց Եւսեբիոս Հեթանոսանուեաց աշխետ՝ մեռեալ անդ յամի 407, որպէս ծանուցանէ 'ի մահարձանէն գտեալ՝ յունական գրութեամբ. 'Ευσέβια... απο Κώμης 'Αδάνων.

2 ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ. 'ի Թուին Հայոց ՇԻ:

3 Urbs munita turribus, populis rapax, armis referta. — Raoul de Caen. — Auro et argento, gregibus et armentis, frumentis, vino et oleo et omni commoditate abundantem. — Gulielm. Tyren.

թեամբ տիրեաց քաղաքին, և սրաճարակ արարեալ զայլազգեսն՝ լռեցոյց 'ի նմին զմաղթանսն Allachibar, և փոխանակ այնր հաչակեցոյց զՔրիստոսի յաղթութիւն. յաւարտ չաղակրատանացն՝ ասէ Տանկրետ. «Գոհութիւն » Աստուծոյ ». և քաջալերեալ՝ երթայ նուաճել զՄամեստիա։ — Ցանարի յաջորդաց Տանկրետեայ՝ կորզեաց զԱտանա մերս Պարոն Լեւոն, որպէս և զայլ բազում տեղիս, զօրս և միանգամայն կորոյս՝ գերութեամբն. կրկին թափեցին՝ որդի նորա Թորոս Բ, և թոռնն Ռուբէն Բ. բայց յառաջ քան զսա՝ մինչդեռ թշնամութիւն էր ընդ Հեթմեանս և Ռուբինեանս, գրգռեալ Օշնի հօր Ս. Լամբրոնեցւոյն՝ զԹուրքս, տարին առ «'ի յԱտանոյ՝ գե-» րի աղջիկս հինգ հարիւր կոյսս, թող զայլ առ և աւար[1]»։ Ի հաստատութեան տէրութեան և թագաւորութեան Լեւոնեանց, որպէս և 'ի հնումն՝ ընդ երկրորդական քաղաքս դասեալ երևի Ատանա. և որ առաւել տարակոյս ածէ՝ ոչ յիշի յառաջին ժամանակս ընդ այլսն, (որպէս՝ 'ի հանդիսի թագադրութեան Լեւոնի), և յոլովն իսկ ԺԳ դարու՝ եպիսկոպոս Ատանայ. և զի անմարթ թուի այնպիսւոյ քաղաքի չլինել յայնժամ եպիսկոպոսանիստ[2], և զի ոչ յիշի առանձինն նստոց կամ կալուածք եպիսկոպոսին վանք մի՝ ըստ օրինակի այլոց, 'ի կարծիս լինիմ թէ աթոռ նորին էր մի յայնց եպիսկոպոսանիստ տեղեաց նշանակելոց 'ի կարգի չորեքտասան եպիսկոպոսաց առ Լեւոնիւ, որոց դիրք անստոյգ և անծանօթ են, թէ և կարծեօք յիշեցան ուրեք, և են Ընկուզուտն, Փիլիպպոսեանցն, Սանվելանց, և այլն։ Բայց յետ առաջին ազատման երկրին Սիսուանայ՝ յԵգիպտացւոց, թուի չնորհագիտ լեալ Ատանայ, և յայնմհետէ առաւել յերևան գայ 'ի պատմութեան. քանզի և 'ի մեծի արշաւանի անդ Պիպարսայ կամ Ալմօթի, եհաս ապստամբն՝ ըստ պատմչաց, մինչև յԱտանա. զոր թերևս աւերէին ընդ այլոց՝ եթէ չէր հասեալ նոցա համբաւ արշաւանաց Թաթարաց։ Յետ քսան ամաց (1286) անդ եգիտ զթագաւորն Լեւոն Բ՝ Ստեփաննոս Օրբելեան՝ ընծայեալն 'ի ձեռնադրութիւն եպիսկոպոսութեան Սիւնեաց. ուր և «Գտաք, ասէ, պատիւ 'ի նմանէ, 'ի վեր քան զարժանն » մեր. և յամեալ առ թագաւորն ամիսս երիս, մինչև » յաշխարհագումար ժողովն ընտրեցին՝ զաւուրս քառասուն՝ այր մի արժանաւոր Կոստանդին անուն, և օծին » զնա պատրիարգ Հայոց՝ 'ի մեծ հրազալուցի Ջառկին. » և 'ի վաղուեան աւուրն՝ զմեզ իսկ ձեռնադրեցին և » պսակեցին ընդ սուրբ առաքելական եկեղեցւոյն Սիւնեաց, և պատուեցին մեծամեծ պարգևօք », և այլն։ — Աստ յամի 1310 կնքեցան դաշինք Ենրիկոսի Բ թագաւորի Կիպրոսի, որ 'ի դիպահօջ կայր 'ի Հայս, և եղբօր նորա Ամաւրեայ՝ քեռաւն Օշնի արքայի, հաւանութեամբ և սորա և պարոնայց Հայոց, առաջի նուիրակի Պապին՝ կոչեցելոյ Raymond de Pins[3]։ — Աստ գումարեցաւ յամի 1316 ազգային սինհոդոսն՝ յաւուրս Օշնի թագաւորի և Կոստանդեայ կաթողիկոսի՝ դրուատելոյն յՕրբելեանէ. և զի վերջընթեր աշխարհաժողով հանդէս է այն, յորում զոյգ ընդ ուխտի եկեղեցւոյն՝ դասակարգի աւագորեարն հայակոյտ, որով և չուք ընծայի քաղաքիս, կարգեսցուք աստանօր զանուանս նոցին հանդերձ յիշատակարանութեամբ ժամանակակից գրչին. «Քրիստոսէր և բարեպաշտ թագաւորն մեր Օշին՝ առաքեալ ծանուցանէ սրբազան կաթողիկոսին՝ Տեառն » Կոստանդեայ. և նոյնժամայն հրաման ժողովոյ հանեալ ընդ ամենայն տեղիս տէրութեան իւրոյ, զի ժողովեսցեն եպիսկոպոսք և վարդապետք և հարք՝ 'ի մի վայր » եկեալ հոգասցեն յաղագս ճշմարտութեանն, և բարձցեն 'ի միջոյ զչարն։ ... Եւ ապա 'ի մի վայր մեր ամենեցուն ժողովեալ՝ 'ի հոյակապ և 'ի թագաւորական » քաղաքն Ատանայ, յանուանեալ տաճար սրբոյն Մինասայ, որ է 'ի թագաւորական պալատին, 'ի մեծի » լուսաւորութեան տօնին Քրիստոսի Աստուծոյ մերոյ.

» ԿՈՍՏԱՆԴԻՆ կաթողիկոս ամենայն Հայոց.
» Յովհաննէս արքեպիսկոպոս Տարսոնի.
» Կոստանդին արքեպիսկոպոս Սսոյ.
» Ստեփաննոս եպիսկոպոս Ատանայ.
» Յովհաննէս † Տարօնոյ.
» Յովհաննէս † Անազարբոյ.
» Յովհաննէս † Մամուեստիոյ.
» Ներսէս † Մօլևոնի.
» Ստեփանոս † Բարձրբերդոյ.
» Յակոբ † Կապնոյն.
» Գրիգոր † Մարաշայ.
» Աւետիք † Նփրկերտոյ.
» Կոստանդին † Անգուրիոյ.
» Մարկոս † Կարուց.
» Ստեփանոս † Կողոնիոյ.
» Յակոբ † Սալամաստայ.
» Կոստանդին † Մարանդունեաց.
» Ստեփանոս † Դրան կաթողիկոսին.
» Յովհաննէս վարդապետ.
» Կիրակոս վարդապետ անապատաւոր.
» Գրիգոր վարդապետն Գերմաղբիւրոյ.
» Գրիգորէս վարդապետն.
» Մարտիրոս վարդապետն.
» Հայրապետ Հայրն Թիւրքթին.
» Բարսեղ Հայրն Խորինին.

» ՕՇԻՆ բարեպաշտ թագաւորն Հայոց.
» Ալինախ արքայեղբայրն՝ տէր Տարսոնի և Լամբրոնի.
» Պարոն Սմբատ մարաջախտ՝ տէր Ասկուռայ.
» Պր. Հեթում մեծ սպարապետն Հայոց.
» Պր. Պեմունդ սէնէսջալն՝ տէրն Մէքայլկլուն.
» Պր. Օշին տէրն Կոռիկոսոյ.
» Պր. Սմբատ տէրն Սմբատակլային.
» Պր. Օշին տէրն Կոպիտառոյ.
» Պր. Լիկոս տէրն Խնձորոլտոյ.
» Պր. Թորոս պռոկսիմոս տէրն Ջօֆրէկլային.

1 Պատմիչ մեր Կիլիկիոյ։
2 Ատանա առ Յունօք մի էր յեպիսկոպոսական թեմից Տարսոնի արքեպիսկոպոսին, ընդ Անտիոքայ պատրիարքութեամբ։
3 Maslatrie, Histoire de Chypre, I, 111.

» Իբրեւ այլ եւ իշխանք եւ ազատորդիք Հայոց, եւ սուսերէց » Թագաւորին Թորոս, եւ այլ եւ բազմութիւնք քահա- » նայից եւ կրօնաւորաց »։

Քննեալ սոցա եւ հաստատեալ զկանոնս եւ՝ զաւանդեալս ժողովոյն Սսոյ՝ որ յամի 1307, յաւելուն. « Իբր. արդ 'ի » հաստատութիւն կանոնիս՝ մեք ամենեքեան որ աստ » ժողովեալ՝ ստորագրեալ ձեռամբ մերով խոստանամք » որ զանուանս մեր՝ եդաք 'ի ներքոյ կանոնիս, եւ կըն- » քեալ զայն ամրացուցաք երդմամբ նշանի խաչին Քրիս- » տոսի եւ սրբոյ աւետարանին.

» Կոստանդին կաթողիկոս ամենայն Հայոց. կամեցայ » եւ գրեցի.

» Յովհաննէս † Տարսոնի, եւ այլքն, արքեպիսկո- » պոսքն, որպէս 'ի վերոյ։

» Նաեւ ձեռնագրեցին սմա՝ բարեպաշտ եւ քրիստոսա- » սէր Թագաւորն Հայոց՝ տէրն մեր Օշին. եւ խնամա- » թեամբ առլցեալ աստուածասէր Պարոն՝ որ եւ արքայ- » եղբայր Հայոց՝ Պարոն Ալինախն, եւ մեծ սպարա- » պետն Պարոն Հեթում. այլ եւ պատուաւորք եւ իշ- » խանք Հայոց. 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ եւ յու- » սոյն մերոյ, որ է օրհնեալ ընդ Հօր եւ Սուրբ Հոգւոյն, » յաւիտեանս յաւիտենից. ամէն »։

Ի շինութեան երկիր Ատանա եւ յաւուրս Գ Լեւոնի որ- դւոյ Օշնի, թէպէտեւ յօրինակս ինչ ժամանակագրու- թեան Անեցւոյն գրի, յամին 1322 Եգիպտացւոց աւերեալ



75. Ադանա, Ջահան գետ, եւ Տաւրոս լերինք 'ի հեռուստ.

զԱտանա եւ զերկիրդն քակեալ. բայց ըստ սոցա օրինա- կաց՝ խնանալի է զԱյաս, որպէս յիշեալք 'ի նորին տեղա- գրի։ Վասն նախնեղակ աւերմանց Սսոյ եւ այլոց քաղա- քաց՝ երկիր յԱտանա ստուգաբանել յեռին Թագաւորաց մերոց, եթէ ոչ վասն ամրութեան ինչ, այլ հարկ է թէ վասն այլ ինչ կարեւոր հանգամանաց։ — Աստուստ՝ 'ի սկիզբն 1329 ամի, 'ի «յանձրար քանանքեցն՝ յանկարծ » առաքեալ պատասխին Լեւոն Թագաւորն Հայոց՝ իշխանք, » ասկա հեծելով, վասն բանելոյ Գունդին Կոռիկոսոյ » (Օշնի, անհրոյ իւրոյ) եւ իւր եղբօրն (Կոստանդնի) ․ եւ » զիսկեցան յԱտանոյ սուհմանքն՝ Գունդին, որ առ թա- » գաւորն երթայր հինգ մարդով. եւ բանեցին զինքն եւ » դարձացին յետ, եւ զգին յարգելք 'ի յեկեղեցին Սուրբ » Մարօրու, 'ի մօտ Ատանոյ. եւ գնաց հեծեալն ու բըռ- » նեց զեղբայրն Գունդին՝ 'ի գեղն Տղայ Լեւոնին, ըզ- » Գունդստաբլն, եւ բերին յԱտանոյ. եւ 'ի մէկ օրն սպա- » նին զերկուքն։ Պատճառ զայս գրին, թէ յետ մա- » հուան Օշին Թագաւորին՝ շատ բերքեր ապրանք առին, » որ չէր իւրեանց սուհմանով ապրանք. եւ այլ շատ բան » ասացին վասն մարդին վասն նոցա, մինչի սպանել

» տվին. որ զճշմարիտն՝ Աստուած գիտէ » ։ — ՅԱտանա էր սա ինքն Լևոն անկասկած՝ և յամի 1335, յորժամ ասպատակեաց Այթուն-ղաշ Նայիպն Հալպայ, և հազիւ զերծաւ անկանելով 'ի Մոլեւոն բերդ։ — Լևոն աստանոր և յիշատակք քաղաքիս ընդ մոտալուտ բարձման իշխանութեան թագաւորաց տերանց նորին։

Ցիշեցաւ 'ի վեր անդր արքունի պալատն, և որ 'ի նմա եկեղեցին Ս. Մինաս. 'ի նմին ժամանակի յիշատակի և Համբեր կամ Ոճհամբեր Ս. Աստուածածին եկեղեցի մերձ 'ի տուն Սիր Սիրուն Գռնապանի թագաւորին Լևոնի, որ ընծայեաց եկեղեցւոյն՝ աւետարան մի ոսկէզարդ, գրեալ յամի 1297, և 'ի վերոյիշեալ արշաւանի Նայիպին՝ գերի անկեալ գրոցն և գնեալ 'ի վ̈ճարէ Թղթագրէ թագաւորին՝ անդրէն եդաւ 'ի նմին եկեղեցւոջ։ — Միւս եկեղեցին Մօրօրու՝ թուի Ասորւոց և յանուն Աւդաւայ կամ այլոյ Սրբոյ նոցին։ — Կայ ցարդ Աստուածածնի եկեղեցին, նորոգեալ. և միւս ևս եկեղեցի Ս. Ստեփանոս՝ նորոգեալ յամի 1649, բայց 'ի գրոց չունիմ զսորա հին յիշատակ[1], և ոչ այլոց ևս եկեղեցեաց, որ հարկ է թէ աւելի քան զնշանակեալքս էին՝ 'ի հարստութեան մերայոցս. յիշատակագիր վերոյգրեալ աւետարանին՝ ասէ ընկալեալ զայն « 'ի վայելս Սուրբ եկեղեցեաց, և սուրբ տաճարին Տիրամօր Սուրբ Աստուածածնին » ։ — Թէ ոչ 'ի բուն քաղաքամիջի՝ այլ և ոչ հեռի կարծեմ զյիշեալն յԵփրեմայ կաթողիկոսէ «Սուրբ » Տիլի կոչեցեալն վայր, որոյ պարիսպն շինեցաւ 'ի վեր» ջին ժամանակիս, 'ի Թուին Հայոց ՌՄԺԱ (1762, 'ի » Գաբրիէլ կաթողիկոսէ) ... յորում ամի եղև ժանտամահ յոյժ սաստիկ 'ի յԱտանայ և 'ի շրջակայս նորա »։ Աստանօր ասէ Եփրեմ թաղեալ զԵղիազար Բ՝ յԱՃպահիցն տոհմէ։ — Սակաւ եպիսկոպոսքն Ատանայ յիշատակեալք կամ ծանօթք ինձ՝ հինք և նորք, են,

Ստեփանոս 1307-16.
Յակոբ 1318.
Գրիգոր 1342.
Յակոբ Կ. Պօլսեցի † 1659.
Յակոբ Նորատունկեան † 1728.
Գրիգոր 1788.
Արիստակէս 1864.

Յառաջին դարս քրիստոնէութեան, թէպէտ և հաւանութեան է ընդ այլոց քաղաքաց Կիլիկիոյ ընդունել զայն և Ատանայ, այլ ոչ յիշին 'ի սմա նահատակութիւնք վըկայից. առաջին եպիսկոպոս ճանաչի Պաւլինոս 'ի ժողովի Նիկիոյ. յաջորդքն յիշին յելս կոյս Ի դարու՝ իբրև Թեմականք նահանգին Տարսոնի։

Ի բառնալ տէրութեան Հայոց 'ի Սիսուանայ՝ Թուրք տոհմն Ռամազանի որդւոյ Եուրքէրի, կալաւ տիրաբար և գլխանիստ տեղւոյն, յետ երից ամաց գերութեան Լևոնի (1378), և պայազատաբար ունէր զմեծ մասն երկրին, մինչև նուաճեցաւ յՕսմանեանց՝ յամի 1575. այլ սերունդք տոհմին բազում անգամ գլուխ ամբարձին ցվերջին ժամանակս իսկ, և ցարդ ճանաչին 'ի նոյն կողմանս Ռամառաճ Օղլու կամ ՊԷճի Ռամազաճ անուամբ։ Յիշէ զսոսա Պերդրանտոն փռանկ ուղևոր՝ յամի 1432, որ և չափաւոր վաճառաշահ ասէ զԱտանա, ոչ կարի հեռի 'ի ծովէ, 'ի բարեբեր վիճակի, առ մեծ գետով՝ յորոյ վերայ արկեալ կայր կամուրջ երկայն և յոյժ լայն. նկարագրէ զբաղանիս քաղաքին կարի բարձր և գմբեթաձև աւարտեալ, լուսամուտ բոլորշի ունելով 'ի գագաթան, ունեակս և աւազանս գեղեցիկս և մաքուրս[2] ։ — Յետ երեսունևհինգ ամաց այսր յիշատակի՝ Շահսուար Զիւլգատրեան նուաճեաց և զԱտանա (1467)։ Յելս կոյս ԺԵ դարու Եգիպտացիք պաշարմամբ առին յՕսմանեանց և քակեցին զամուրս քաղաքին, այլ ընդ հուպ դաշնադրութեամբ թողին 'ի նոսա. և վերակացու կարգեալ Ռամազանեանք՝ արարին բազում շինութիւնս, ընդ որս և զբերդն վերականգնեցին։ Բայց յետ այնր 'ի բազմապատիկ վրդովման երկրին յաղատակեաց զրոհիցն և 'ի բըռնաւորաց կամ յասպատակաց, յիշէ ժամանակագիր մի մեր 'ի սկիզբն ԺԷ դարու զոմն 'ի Նոցանէ՝ Թաւիլ անուն, որ « զԱտանա զաւառօքն նեղեաց » ։ Ծանօթ է սա և 'ի պատմութեան Եփրեմայ կաթողիկոսի, որ Դաւիլ գրէ զանունն, և ասէ յամին 1606 յետ պաշարման Սսոյ և Մամեստիոյ՝ « եկեալ ժամանէր յԱտանայ. ո» րում ընդ առաջ ելեալ և մարտ մղեալ բնակիչք քա» ղաքին՝ ոչ կարացին զդէմ ունել. այլ պատերազմելով » ընդ միմեանս՝ մինչև եկեալ հասին 'ի Կարմնճայուան » քաղաքին. և անդ զօրքն չարադէմ զազանին՝ մարտ» կոցս յարդարէին, և զդրօշս իւրեանց 'ի նմա հաստա» տէին. և 'ի մէջ մարտկոցին զօղեալ՝ արտաքուստ 'ի » ներքս կապարճընկէց լինէին. նոյնպէս և քաղաքացի» քըն 'ի ներքուստ՝ զաւուրս բազումս. և ոչ կարացին » խախտել զմարտկոց նոցա և կամ զդրօշս նոցա։ Բայց » համառօտեալ ասացից, զի յաւուր Ծաղկազարդի, » յետ բազում կոտորուածոց՝ յորում զիակունք մեռեւլոց իբրև զդերբուկս քարանց կուտեալ և դիզացեալ » եղեն, էառ զքաղաքն, բայց յայն օր ոչ եմուտ 'ի քաղաքն. զլխաւորք և մեծամեծք քաղաքին թողեալ » զտունս և զստացուածս իւրեանց՝ փախեան և մտին 'ի » բերդն։ Իսկ 'ի յերկրորդում աւուր՝ որ էր աւագ երկուշաբաթի՝ եմուտ 'ի քաղաքն, և նստաւ 'ի նմա իբրև » զսեպուհ տէր քաղաքին, և աւարտեաց զամենայն ինչս » նորա. և ապա զինս եդ 'ի բերդն եղեալ քրիստոնէից. » և յետ երեսուն աւուրց ելեալ գնաց » ։ — Յամի 1622 Սուլդան Մուրատ Դ յերթալն 'ի Կարին՝ էանց ընդ Ատանա, և ցարդ ցուցանեն զտունն ուր ագաւն, բայց որ- Թեալ են զդուռն սենեկին, իբրու զի չէ օրէն ումեք մտանել յայնքանոյ առն օթեվան, կամ առ պատուոյ կամ առ ահի։ — Յերրորդ քառորդի ԺԷ դարու յիշին գլխաւոր տանուտեարք քաղաքին, Խօճայք՝ Խաչատուր Մաղաքուղաճեանց, Սարգիս, Մանուկ, Եուսուֆ, և այլք։

1 Ծանօթ է ինձ Սաղմոս գրեալ յամի 1674 ընդ հովանեաւ երկուց եկեղեցեացս՝ 'ի Սարգսէ որդւոյ Ղուքլանիէն, վասն վարպետ Անդրէասի որդւոյ Չէլէպիէրէ. և որդւոյ նորա տիրացու Շահինէ։ Ընդ սորին Ս. Ստեփաննոսի հովանեաւ՝ յամի 1708 նորոգեալ է 'ի Սարգսէ Հաճնեցւոյ՝ մեծ ճառընտիր մի գրեալ յամի մահուան Հեթմոյ Ա։

2 Անդ տեսեսնա երկուս երիտասարդս մահմետականս, որոց յետ գնալոյ յուխտ 'ի Մէքքէ և տեսանելոյ զգերեզման մարգարէին իւրեանց՝ հանեալ էր ինքեանց ձեռօք զաչս իւրեանց։

— Ի սկիզբն ԺԸ դարու (1707) Պօղ-Լուկաս (Paul-Luc) փռանկ՝ իջեւանեալ յարուարձանս քաղաքին, ստորագրէ զբերդն առ գետեզերբ, 300 քայլ շրջապատաւ, երկաթապատ դրամբք ամրացեալ, թէպէտ և դատարկ 'ի ներքին կազմուածոց և զինուց, բնակեալ 40 երդ ընտանեօք զօրականաց. Նշանաւոր միայն և աւեր 'ի նմին գտանելով զբանտն, գուբ 40' խոր, 60' շրջապատաւ, յորում հեծէին վաթսնիւ չափ բանտարկեալք, ընդ որս և պատրիարքն Ասորւոց՝ երիւք եպիսկոպոսօք, վասն բանի կրօնից մատնեալ 'ի հակառակորդաց։ Ցիշէ և զմեծ կամուրջն հնգետասան կամարօք, առ որով էր և ազուգայ ջրոց՝ խանգարեալ, և այժմ գրեաթէ իսպառ յատակեալ։ Զայսոսիկ այլազգ նշանակէ Ցակոբ պատրիարք Նալեան 'ի Պատմութեան Հայոց. « Զարմանալի է երկար խալտըրըմն » (սալայատակ), յորոյ տակն կամուրջներ շինեալ 'ի Ռուբինեանց Թագաւորացն Կիլիկեցւոց. զի ձորամէջ գոլով խիստ տղմոտ է. ուստի և կամրջի անունն և գետոյն՝ Գըրգ-կէչիտ կ'ասվի. զի ոլորտուն գոլով քանից » անգամ կ'անցնըվի. այս ջուրս բազմանալով՝ ճերմակ » կամըրջի տակէն կ'անցանի »։ Թուի շփոթել պատրիարքին զԳըրգ-կէչիտ գետ և զդիրս Աք քէօփրիւ կամըրջի, և զԱտանա 'ի վերայ Պիւռամոս գետոյ դնել։ — Ի սկիզբն դարուս յիշէ մերս Հ. Ինճիճեան յԱտանա իջեւանս, վաճառանոցս, բաղանիս, և 'ի մզկիթսն՝ նշանաւոր զշինեալն 'ի Ռամազանեանց Ուլու-ճամի՝ (որոյ են գեղեցիկ քանդակք երկաթի վանդակաց պատուհանից),



76. Երկաթի վանդակ պատուհանի մզկիթին Ատանայ.

հանդերձ վարժարանաւ առ նմին. զհին մզկիթն՝ 'ի հընումն եկեղեցի եղեալ յանուն Ս. Ցակոբայ. զապարանս կուսակալին առ գետովն. « զբերդն կառուցեալ 'ի վերայ » կարծրակուռ վիմի, պարիսպ նորա զարդարեալ բրգօք. » և... մեծագործ կամուրջ քարաշէն »։ — Ի միջի յիշեալ վաճառանոցին ետես Քիննայր անգղիացի (յամի 1814) բարձր կամար մի բիւզանդացի։ Ի գետնի բաղանեացն մնան նշխարք հին եկեղեցւոյ, յորոյ վերայ կայր արձանագիր լատին (կամ յոյն) իբրու 'ի Ն դարու գրեալ, զոր եբարձ և տարաւ իտալացի ոմն (Օրդա) յաւուրս նուաճման երկրին յԻպրահիմէ։ — Բերդն բրգազարդ՝ բաւեալ մինչև 'ի մերձաւոր ժամանակս, խանգարեցաւ յեգիպտական պատերազմին, հրամանաւ Մէհէմմէտ Ալեայ. որոյ նուաճեալ զքաղաքն 'ի ձեռն որդւոյ իւրոյ Իպրահիմայ՝ քաղաքատեսուչ կարգեաց զՊատնիճան-օղլու Թուրքմէն՝ զիշխող լեռնակողմանն։ Ի միում 'ի ստորերկրեայ յարկացն պահիւր երկաթաշէն դուռն կամ վանդակն յիշեալ 'ի Պօղ-Լուկայ, կմբաձև գործուածովք առիծուց և ընձառիծուց, որպէս ետես և Դեսիէ յամի 1836. այլ ոչ գիտեմ թէ պահիցի՞ ցարդ։ — Կամուրջն յամենայն իրաքնին ուղևորաց յիշեալ, բազում անգամ ևս նորոգեալ՝ զարդիս 18 կամարս ունի, և 'ի միջավայրի՝ պաշտգամբ 'ի վերայ չորից սեանց։ Հիմնարկութիւն կամըրջիս թերևս երիցագոյն է քան զկառոյցս Յուստինիանոսի, քանզի գերմանացի ուղևորն Օդդէր եգիտ 'ի նմին արձանագիր մի յոյն, եթէ չիցէ այլուստ փոխադրեալ վիմին, զԿ. Յուլիոսի Լեւոնիդասայ ուրումն աթենացւոյ՝ զօրականի ԺԶ Լեգէոնի Փլաւեան Փիրմեան, նուէր առնելով Դից սանդարամետականաց և ծնողացն, այսպէս.

Γ. ΙΟΥΛΙΟΣ ΛΕΩΝΙ
ΔΗΣ ΑΘΗΝΑΙΟΣ ΣΤΡΑ
ΤΙΩΤΗΣ ΛΕΓΕΩΝΟΣ
Ις ΦΛ. ΦΙΡΜΗΣ ΘΕΟΙΣ ΚΑΙ
ΤΑΧΘΟΝΙΟΙΣ ΚΑΙ ΤΟΙΣ ΓΟΝΕΥΣΙΝ.

Իսկ մեծ ազուգայն ոչ ևս երևի. բայց յիշատակ նորին արձանագրեալ յունարէն չափական բանիւ 'ի վէմ մի քառակուսի՝ պահի ցարդ, փոխադրեալ և ագուցեալ 'ի սեղան եկեղեցւոյն Յունաց. յորում՝ ծանուցանէ քերդողն զճարտարապետն՝ Աւքսենտ անուն, որ 'ի վերայ պղնձեայ յատակի հուն հորդեաց յախուռնընթաց գետոյն, զոր առաջնոյն ոչ կարելով նուաճել՝ յառուակ իմն չնչին փոխեալ էին զԿիւդնոս (փոխանակ Սարոս ասելոյ). իսկ սա 'ի վերայ կամարաց հաստատեաց և հանդարտեաց զգետն, վասն որոյ եղիցի զուգափառ սանձողին զԿիւդնոս։ Մերձ 'ի կամուրջն է հուշակեալ ոճարանն Պարսից, Աձէմ գահվէ կոչեցեալ։ — Գտանին և այլ սակաւ արձանագիրք, բայց յոլովագոյն էին յառաջին դարս, նաև 'ի սկզբան ԺԸին, որ արդ ոչ երևին, վասն խանգարման շինուածոցն և փոխադրութեան քարանց յայլևայլ կողմանս։ — Ցամի 1836 'ի պեղել Հայոց ոմանց ընդ պարսպօք քաղաքին, գտին բեկորս սաղաւարտից, խաչս պղնձեայս, և այլն, մնացուածս՝ ոչ գիտեմ 'ի մերազնեայց եթէ 'ի Յունաց կամ 'ի Խաչակրաց։

Բայց թէպէտ և այսպէս անչքացեալ արդ, և վասն տօթոյ ամարանի թափուր 'ի բնակչաց մնացեալ, քաղաքամայր Կիլիկիոյ ճանաչի այժմ Ատանա, բազմաբնակ գոլով քան զայլ քաղաքս, և ըստ ոմանց առաւելլով քան զմիահամուռ բնակիչս նոցին. զի են որ 10,000 տունս ասեն լինել 'ի նմա և 60,000 բնակիչս, այլք կիսով չափ նուազեցուցանեն. մերազգեաց տունք համարին յոմանց իբր 2000, թէպէտ ոմանք աւելի ևս ասեն. Տէվիս (յամի 1875) 1700 տուն համարէր սոցա, զատ 'ի կաթոլիկաց և բողոքական Հայոց. առաջնոցն՝ երկու եկեղեցիք են հանդերձ վարժարանօք, և երկու այլ դպրոցք. բողոքականք 120 տունք են. Յունաց 250 տունք են, եկեղե-

ցի և դպրոց մի. Մահմէտականաց մզկիթք տասն. յորս գլխաւոր՝ Ուլու ճամի, վերայիշեալ շինածն Ռամազանեանց, անզմբէթ, կրկնակարգ նախադրամբք. դուռնն և Միհրայն ութանկիւնի սպիտակ և սեաւ կճեայ քարաշարիւ զուգեալ: Տունք 'ի հասարակի աղիւսաշէնք են և շատք երկյարկեանք, և փողոցք քաղաքին ոչ անձուկք: Թէ ոչ համօրէն տեսլեամբ վայելուչ քան զՏարսոն, սակայն բարգաւաճագոյն քան զայն և ճոխագոյն. նոյնպէս և բուսաբերութեամբն՝ թէ ոչ բազմազան, այլ ունի և արմաւենի և եղէգն շաքարի և մեծամեծ պիստակենիս: Առատ են և որսք ձկանց գետոյն, ընդ որ գան և նաւք մանունք 'ի կողմանց Սելևկիոյ և Կիպրոսի: — Առևտուր վաճառականութեան՝ առաւելապէս 'ի ձեռս Յունաց է, զի Հայք մանրավաճառք և երկրագործք են յԱտանա. գլխաւոր արտաքոյ վաճառք են ցորեան, ամի ամի աւելի քան զ'30,000,000 լիդր, և երբեմն կրկին և այլ աւելի, որ յաւէտ յԱնգղիա առաքի. ասր և բամբակ և իւղ կնջթի. բամբակն առաքի 'ի Զմիւռնիա և 'ի Սպանիա. ասրն և կնջիթ՝ 'ի Մարսիլիա:

102. Հանդէպ գետոյն յարևելակողմն Ատանայ անտառ է ընդարձակ, յորում երևին ոչ սակաւ մնացորդք հին շինուածոց, ճարակք երէվայրեաց, կընճից և հօտից Թուրքմանաց: — Ի սահմանս Ատանայ, ծանօթագոյն է Կեավուր-քէօյ հայաբնակ, իբր ժամու հեռի 'ի քաղաքէն 'ի Հր. Մ. 40 կամ աւելի տամբք: Յիշի և Քօզ-օլուգ կամ Քօզալաց գիւղ հայաբնակ 'ի սահմանս Ատանայ, այլ ոչ գիտեմ յորում կողման. տունք 'ի նմա ըստ ումեմն՝ 15, ըստ այլում՝ քառապատիկ առաւել: — Նշանակին 'ի քարտս գեօղք վաթսնիւ չափ, յաւէտ 'ի հարաւոյ Ատանայ՝ երկուստեք Սարոսի մինչև 'ի ծովեզրն. այլ զի հանգամանք նոցին անծանօթ են ինձ, և անուանքն ոչ աներկբայք, աւելորդ համարիմ յիշել աստանօր, բայց միայն զԳարա-հաճիլէր բերդ և գիւղ՝ յարևելից կուսէ 'ի սպառուած երկայնանիստ լեռնաբլրոց, փափագելի 'ի քննութիւն. և զՍիպիլիա 'ի ծովակողմն, վասն նմանութեան անուանն Սիպիլ կամ Զապել դշխոյից Սիսուանայ:

Ի բիւզանդական պատմութիւնս յիշի 'ի սահմանս Ատանայ՝ Գերոն քաղաքիկ, զոր առեալ յԱրաբաց Վասիլ Ա, յամի 875, մատնեաց յաւար զօրաց իւրոց, 'ի փոխարէն զուր ջանից նոցին յառնուլ զքաղաքն մեծ և ամուր, յորմէ ձեռնթափ լեալ էր, մանաւանդ վասն ձմերայնոյն 'ի վերայ հասանելոյ:

Ի դաշտի անդ Ատանայ աւանդէ յիշատակագիր ոմն մեր՝ զմի 'ի յետին ազգային գործոց, որոյ մանրամասն գիտելիք փափագելի մնան 'ի յայտնութիւն՝ յայլոց յիշատակագրաց կամ 'ի պատմչաց. զի այսչափ ինչ ասէ վասն Հեթմոյ սպարապետի ժամանակին. «Սա էր որ
» սպան զքաջ զօրապետն Եգիպտացւոց Խօմէր՝ 'ի դաշ-
» տըն Ատանայու, յաւուրս Կոստանդնու արքայի, և ա-
» րար յաղթութիւն մեծ»: — Ի սմին դաշտի ընդ մէջ Մսայ և Ատանայ, մերձագոյն 'ի սա՝ յառաջնումն ամի յետ մահուան Մեծին Լևոնի, այն է յամի 1220, յապստամբել ոմանց յիշխանաց և դիմել հինգ հազար զօրօք 'ի Թագաւորանիստն կոյս, պատահեցաւ նոցա արիասիրտ Պայլն Կոստանդին՝ երեքհարիւր արամբք, և քաջալերեալ զիւրսն, «իբրև հասին 'ի տեղին յայն՝ ուր
» փոքր կամուրջն է, յարձակեցան 'ի վերայ, և դարձու-
» ցեալ զնոսա 'ի փախուստ, և տարան մինչև 'ի Տարսոն.
» և ոչ ումեք մեղանչէին սպանմամբ, այլ զերիվարս նո-
» ցա և զզէնս և զհանդերձս առնուին, և զնոսա դա-
» տարկս արձակէին»: — Ոչ շատ հեռի 'ի վայրւցս կարծեմ և զճակատատեղին մեծի մարտի այլազգեաց, զանուանեալն Աղաչայիր, ընդ մէջ Ատանայ և Տարսոնի, ուր յամի 1488 ('ի 16 օգոստոսի) գումարեցան Օսմանեանք և Եգիպտացիք դիմամարտք, անուանի զօրավարօք իւրեանց. առաջնորդ Օսմանեանց էր Ալի փաշա պէկլէրպէկ Ռումէլեայ, օգնական ունելով զԽայիլ փաշայ, զՍինան պէկլէրպէկ Անատօլեայ և զՆագուպ պէկլէրպէկ Գարամանայ. Եգիպտացւոց սպարապետ էր Ուզպէկ (Իւզպէկ), ամիրայիւք Դամասկոսի և Հալպայ. և հզօր կռուի եղելոյ՝ յաղթող գտան Եգիպտացիք. Իւզպէկ պաշարեալ էառ զԱտանա, թէպէտ և 'ի դարձին ընդ կապանն Պաղրասայ՝ ոչ սակաւ վտանգեցան 'ի զօրաց Օսմանեան ծովապետին, զորս՝ սա թափեալ 'ի ցամաք՝ կալեալ էր զկիրճս տեղւոյն. և հարկ եղև յաղթողացն թողուլ զաւար իւրեանց, և հուն անցի բանալ:

Յիշատակք ինչ մերասեռիցս Ատանացւոց գտանին 'ի տար աշխարհս, յելս կոյս ԺԶ դարու. վաճառականք ոմանք Սեբցիք, և Ատանացիքն Դոմինիկոս և Ստեփանոս որդի Վասլի, կրետացի նաւու գալով 'ի շահաստանս Իտալիոյ, Մեսսենացի նաւ մի պատերազմիկ ըմբռնէր ընդ նաւն Յունաց յափունս Դալմատիոյ, (յամսեան նոյեմբերի, 1583), և գերի վարէր զնոսա, Թուրքս համարելով. այնպէս համարեալ և զԴոմինիկոս՝ տանջէին ուժգին՝ զի խոստովանեսցի. այլ նա պնդելով զքրիստոնէութիւն իւր, իբրև յոգիս ապաստան եղև՝ ասէր ըստ կամաց նոցա. և եկեալ 'ի Վենետիկ՝ երկիցս (5 և 17 մարտի, 1584) առաջի նոտարաց վկայութեամբ նաւողակցաց Հայոց և Յունաց, և Հայոց բնակելոց 'ի Վենետիկ՝ վաւերացուցանէր զքրիստոնէական հաւատոն և զբռնադատ ուրացութիւնն: Յիշի նա 'ի Վենետիկ և յամի 1587, յորում Ստեփանոս ընկեր նորա և վաճառակից (որ ամօք յառաջ երթեալ էր 'ի Հռովմ), կարգեաց զսա իւր կտակակատար (29 ապրիլի), քանզի ախտացեալ էր մերձ 'ի մահ, կտակելով զինչսն կնոջ իւրում Անների (Arnier) և որդւոյ իւրում Յակոբայ, և մեռաւ (ամաց վաթսնից, յ'2 մայիսի): — Երկամաւ յառաջ (22 մարտի, 1585) և Մարտիրոս ոմն՝ որդի Կարապետի Ուռհայեցւոյ՝ գրեալ կտակ՝ զսոյն Դոմինիկոս կարգեալ էր կատարիչ, նոյնպէս վաճառակից գոլով Ստեփանոսի[1]:

[1] Թուի ապաքինեալ սորա յախտէն, զի ոչ յիշի մահ նորա, և զի կտակն այն կնքեալ պահիւր իբր յ'300 ամաց հետէ՝ 'ի դիւանս նոտարաց Վենետկոյ, և մերով խնդրանօք յիտալական պետութենէ՝ տուաւ հրաման և բացաւ, ('ի 27 օգոստոսի, 1877):

# Գ· ՍՏՈՐԻՆ ՀՈՎԻՏ ԿԻՒԴՆՈՍԻ

## ՏԱՐՍՈՆ

103. Զմիջին և զվերին հովիտս Կիւդնոսի՝ տեսաք 'ի սկզբան տեղագրութեան աշխարհիս Սիսուանայ, և ընդ Նեղուցս Կիլիկիոյ անցեալ՝ ժամանեցաք 'ի Մոպսուկրեն և յիջեվանս ճանապարհին՝ մինչև 'ի դաշտաբերանն. անտի և այսր ընդ հարաւ մնայ մեզ արդ տեսանել զստորին հովիտ գետոյն՝ մինչև 'ի մուտս նորին 'ի ծով։ Ի սահմանաց անտի կամ 'ի լեռնոտանց՝ 'ի հիւսիսոյ արևմտից մինչև 'ի Տարսոն քաղաք՝ սակաւ մղոնից ճանապարհ է, իսկ 'ի քաղաքէն մինչև 'ի ծով իբր 12 մղոն. յայտ ուրեմն՝ զի դաշտն Կիլիկիոյ տարածանի յարևելից և 'ի հարաւոյ Տարսոնի, զոր և կտրէ հռչակեալն այն գետ Կիւդնոս, սակաւ խոտորմամբք ուղղակի իջանելով ընդ հարաւ։ Ծանօթ է արգասաբերութիւն դաշտին, թերևս առաւելեալ 'ի սահմանս քաղաքին, զոր շրջապատեն պարտէզք պտղալիցք, այգիք, թզենիք, ձիթենիք, թըթենիք և սխենիք. և պիտանին 'ի շահավաճառ՝ բամբակ անբաւ. այլ և 'ի գրօսանս և 'ի վայելս՝ մանաւանդ եկաց արևմտեայց՝ ընծայեն առատապէս դաշտն և մերձաւոր գահաւանդք՝ որս երէոց և հաւուց, վիթս երագունս, ագլորս և սագս վայրիս, սալամբս և նմանիս։

Ըստ արգասաբերութեան երկրին՝ հարկ էր ամենայնիւ և շինաշատ լինել այսմ մասին Կիլիկիոյ, յորում պատուականագոյն կամ տիրագոյն չէն նորին՝ այսինքն մայրաքաղաքն՝ հաստատեալ կայ, և միշտ այնպէս ծանուցեալ յ'2500 և յաւելի յամաց հետէ, անցեալ ընդ բազմապատիկ և այլանման արկածս և բաղդս. որոց յետինն՝ հաւասար այլոց քաղաքաց աշխարհին՝ և զգլխաւորս զայս առանձնացուցեալ երևի. քանզի և ոչ զոմաւ նշանակին գեօղք և աւանք յոգնաթիւք, ոչ 'ի քարտս և ոչ 'ի տեղագրութիւնս. և բովանդակ իսկ տարածութիւնն՝ որ ընդ արևելս մինչև 'ի սահմանս Ատանայ, և ընդ հարաւ՝ մինչև 'ի ծով՝ անապատաձև իմն է. յայտ է թէ և կլիմայն տօթագին վատասուն՝ ոչ ներէ արդ բազմամարդութեան, որպէս էրն 'ի հնումն։ Բայց յիշելի է և այս, զի ոչ սակաւ այլափոխեալ է արդ երկիրն 'ի վաղնջուց անտի ժամանակաց հետէ. քանզի յայնժամ գրեաթէ ծովեզերեայ քաղաք էր Տարսոն, և գոգ մի մեծ Միջերկրականին՝ Ռեգմա անուն, հազիւ փարսախաւ կամ ևս նուազ 'ի բացեայ 'ի պարսպացն՝ ընդունէր գետ նաւարկելի, և ընդ այն հասուցանէր զնաւս 'ի քաղաք անդր. իսկ զարդիս՝ որպէս յիշեցաք 'ի վերդ՝ աւելի քան զտասն մղոն է ընդ ծովեզրն և ընդ քաղաքն. յաւէտ ցամաքին աճեցեալ յողողակէ գետոյն, քան ծովուն նհանջելով. որով և պատշաճ կայանք նաւուց՝ խափանեալ մնան 'ի հարաւոյ կողմանէ Տարսոնի. և հարկ է արդ ընդ արևմուտս ծովեզերին խոտորել և խնդրել նաւահանգիստ 'ի Մերսին աւան, աւելի քան զվեշտասան մղոն հեռի 'ի քաղաքէն։ Ի դէպ էր յայսմ պատճառէ նուազել Տարսոնի 'ի սկզբնական առաւելութենէն և 'ի շքոյն, զոր կապտէ արդ և Ատանա նախապատուեալ յաթոռ կուսակալի. յայսր ամենայնի վերայ՝ Տարսոն մի յայնց քաղաքաց և կէտից երկրի է, որ անմոռաց պահէ և պահեսցէ զհին և զպանծալի յիշատակսն, յորս կայ մեզ արդ դեգերել. մանաւանդ զի որպէս նշանակեցաք՝ բովանդակ ստորին հովիտս Կիւդնոսի՝ գոգջիր ոչ ընծայէ մեզ այլ չէն՝ բայց զմենացեալ մայրաքաղաքն իւր մեծ։

Մերձաւորութիւն ծովուն, և ոչ հեռաւոր սահմանաբար էջք և ընթացք Կիւդնոսի, ընթերակայ հովանաւոր ստորոտք տաւրոսական լերանց, և գեղատեսիլ գահաւանդն առաջին, արդարացուցանեն զընտրութիւն դիպան տեղւոյն՝ 'ի գլուխ բնակութեան համասփիւռ դաշտագետնին և բազմակատար լերանցն, և որ 'ի նոսին ձորոց և հովտաց։ Այլ ո՞ արդեօք ուշիմն այն վաղեմի կերտող Տարսոնի։ — Յառաջ մատչին և աստանօր առասպելաւանդ Հելլէնք. յորոց՝ բնիկն Տարսոնի Աթենոդոր՝ մինչև 'ի Յաբեթեանս հանէ զսկիզբն շինութեանն, յԱնքիալէ ումն դուստր Յաբեթի, (յորոյ անուն ճանաչէր ծովեզերեայ քաղաք մի զուգաժամանակ ևս և զուգափառ Տարսոնի), և յորդի նորա Կիւդնոս՝ յորմէ անուն գետոյն, և յորդի սորա՝ Պարթենիոս, որոյ շինեալ աստանոր քաղաք՝ կոչի Պարթենիա։ Ըստ այլոց՝ Տարսիս կամ Թարշիշ որդի Յաւանայ շինէ զքաղաքն. և կամ՝ այսպէս (Տարսոս կամ Տարս) կոչի՝ նշանակելով ցամաք՝ ըստ յունականին. կամ՝ զի բնակիչք նորա նախ հնարեցին ցամաքեցուցանել զպտուղս, կամ՝ զի յետ ջրհեղեղին նախ աստ երևեցաւ ցամաքն, և կամ 'ի նոյն 'ի ταρσός բառէ՝ այլ զարշապար նշանակելով. որպէս թէ դիւցազինն Բելլերոփոնի աստանօր ձգեալ զհետս զարշապարացն, մինչ

... « Դիւց համօրէն՝ իբրև յաշաց ելանէր,
Ընդ դաշտն Ալէյական թափառ շրջէր միայն մոլոր,
Զոգիան իւր ուտելով և 'ի հետոց մարդկան խուսափ[1] »։

[1] ՀՈՄԵՐՈՍ, 'ի Զ հագներգութեան Իլիականին. տողք 200—202. ըստ թարգմանութեան Հ. Արսենի Բագրատունւոյ։

— Առ մեզ ն տառիւ հաւի անուն քաղաքին՝ Տարսոն, և դուն ուրեք ս իւ Տարսուս, որպէս միշտ առ օտարս, Ταρσός, Tarsus, և երբեմն Տերսուս, Τερσός, երբեմն ևս Թաւ գրով Թարսիս, Θαρσίς. և զի էր 'ի հնումն և այլ քաղաք համանուն, յորոշումն՝ յաւելուին սմա՝ առ Կիւդնոսի լինել, Ταρσός πρός τῷ Κύδνῳ. Թարսուս կոչեն և Արաբք և Թուրքք, طرسوس. 'ի միջին դարս առ Լատինս այլայլութեամբ գրի և Tursolt. Պէսպէս պատկերօք դրամք հինք գտանին Տարսոնի, շատք յունագիր, և ոմանք փիւնիկեցի տառիւք, որպիսի է և այս, կերպարա-



78. Աքեմենեան կամ փիւնիկեցի դրամ Տարսոնի.

նելով զԲահաղ դիս, և 'ի միւսում դիմի՝ զառիւծ ցլասպան, որ նշանակէ զՊարսիկն նուաճող Տաւրոսի. յայլս 'ի դրամոցն դրոշմեալ է պատկեր Սարդանապալու, կամ բրգաձև շիրիմ նորին: Գտանին և բազում քանդակք Թրծեալք և քարեղէնք զանազան՝ առասպելական պատկերօք՝ 'ի բրածս սահմանաց քաղաքին, յորոց յայտ յանդիման երևի այլևայլ ազգաց և կրօնից յաճախութիւն 'ի Տարսոն, այլ առաւելապէս Յունացն. որք արդարև գէթ յաւուրց Աղեքսանդրի յունացուցին զքաղաքն, բարբառով իւրեանց և պէսպէս բարգաւաճանօք: Յառաջ



79. Յունական դրամ Տարսոնի.

քան զայն հազիւ ցդար մի ևս 'ի վեր ելանէ ստոյգ յիշատակ քաղաքին, այն է իբր 400 ամաւ նախ քան զԹուականն Փրկչին, յաւուրս Կրտսերոյն Կիւրոսի. որ 'ի խաղալն ընդդէմ եղբօր իւրոյ՝ եկաց 'ի քաղաքիս աւուրս քսան, առ կուսակալի կամ Թագաւորի երկրին՝ Սիւեննեսեայ: Յառաջ քան զայն՝ բազմաց ընդունելի է փախստական դիմումն Յովնանու մարգարէի 'ի Թարշիշ՝ լինել 'ի Տարսոն. որպէս և Եզեկիելի ասացուածքն յողբս Տիւրոսի (Իէ, 16). « Երփն երփն Նարօտուց 'ի Թարշշայ. » և ուր նա վասն Գովգայ և Մագովգայ՝ ըստ մերում Թարգմանութեան (ԼԸ, 13) ասէ, « Սաբա և Դեդան և վաճառականք Կարքեդոնացւոց», լատինականն գրէ՝ Թարշշի[1], (Negotiatores Tharsis): Թէ և այլազգ ևս մեկնիցին այսոքիկ՝ անուրանալի է վաղեմի բարգաւաճանք Տարսոնի՝ վաճառաշահութեամբ անքոյթ նաւահանգստին. յորմէ երբեմն, ասեն պատմիչք ոմանք, 3000 նաւք մեկնէին ամի ամի: — Ամենայն յիշատակողք անցից Մեծին Աղեքսանդրի ընդ Տարսոն՝ ոչ մոռանան զլոգանալ նորին 'ի գետն Կիւդնոս, և զմահացու հիւանդութիւնն, զոր շատք ոմանք համարէին 'ի բնութենէ ջուրցն, այլ ոչ հաւանին փորձականք: Աղեքսանդր ետ և Տարսոնի զազատութիւն 'ի լծոյ Պարսից, (յորոց կարգեալ էր յայնժամ քաղաքապետ՝ Արշամ ոմն): — Առ Սելևկիացւովք՝ որոց վիճակեցաւ քաղաքս այս, մեծապէս պայծառացաւ շինութեամբք, արուեստիւք, վաճառականութեամբ և ուսմամբք. մինչև յետ Աթենայ և Աղեքսանդրիոյ՝ Թերևս իմաստասիրագոյն քաղաքաց համարել. և փոքր 'ի շատէ պահեաց զայս շնորհ դարս վեց կամ եօթն, գէթ առաւել քան զամենայն քաղաքս Փոքուն Ասիոյ. աճեաց յայնժամ և բնակութիւն քաղաքին, որում և պատմիչն Միխայէլ Ասորի վկայէ, ասելով. « Այս Սելևկիոս բնակեցոյց զմարդկան բազմութիւն 'ի Տարսոն Կիլիկեցւոց. զի վասն վատախառնութեան տեղւոյն՝ չբնակէին անդ զառաջինն »: Եւ զի Ասորւոց Թագաւորացն կամ Սելևկեայց յոգունց անուն էր Անտիոք՝ կոչեցաւ և Տարսոն Քաղաք Անտիոքացւոց, մականուամբ անուան Կիւդնոսի, որպէս և 'ի դրամսն տեսանի: Յայնմ ժամանակի ընծայեցան 'ի նմանէ բազում գիտնականք, որպէս Աթենոդորք կրկին, ստոյիկեանքն Անտիպատրոս, Արքեդամոս, և Նեստոր Ակադեմեան, և քերականքն Արտեմիդոր և Դիոդոր, և Դիոնիսիդ կատակերգակ, և այլք. ընդ որս և վատահամբաւ պուէտն Բոյեթ անուն՝ 'ի վերջ կոյս Ա դարու Ն. Ք.: — Առ Պոմպէիւ զառաջինն անկաւ Տարսոն ընդ իշխանութեամբ Հռովմայեցւոց, և եգիտ շնորհս ազատականս. առաւել ևս 'ի Կեսարէ՝ որում կուսակիցն եղև 'ի քաղաքական պատերազմին, վասն այնորիկ և ընկալեալ զանուն նորին կոչեցաւ ևս Յուլիուպոլիս, Juliopolis. և ևս մեծարեցաւ յԱնտոնիոսէ և ապահարկ գրեցաւ: Ծանօթ է 'ի պատմութեան չքեղաշուք ընդունելութիւն Կղէոպատրայ 'ի սմանէ, 'ի գալ դշխոյին աստղկանման տարազու՝ ճոխազարդ նաւու ծիրանաթոյր առագաստելոյ՝ ընդ Կիւդնոս, մինչև 'ի քաղաքն, և Թակարդել զպագշոտ հիւպատն 'ի գեղ իւր և 'ի կորուստ երկոցուն. որոց յաղթականն Բ Կեսար Օգոստոս՝ շնորհեաց Տարսոնի զպատիւ ազատ քաղաքի. և այս ևս դրոշմեցաւ 'ի դրամս սորին, Libera Civitas. Մարթ էր զայն ժամ համարել բարձրագոյն փառաց Տարսոնի, շնորհիւ գերագունի ինքնակալին. այլ զոգ 'ի նմին ժամանակի՝ իսկապէս և միայնն վեհագոյն Տէր երկրի և երկնից՝ շնորհեաց նմա զանհաւասարելին բաղդ, հայրենիս լինել առնն հրաշալւոյ, զոր մարթ է արդեօք, որպէս զՅովհաննէսն՝ Կարապետ Քրիստոսի, կոչել և զնա՝ հետևորդ Քրիստոսի, առաւելեալ յառաքելս. այն ինքն է Պօղոս, հայր համատարած, ըստ հոգերգութին մերոյ, և վկայեալն 'ի Քրիստոսէ՝ Անօր Ընտրութեան. որ ինքնին յաշխարհական ատենի հրապարակէր զինքն, « Այր հրեայ, 'ի Տարսոնէ Կիլիկեցւոց, ոչ » աննշան քաղաքի քաղաքացի[2] ». և 'ի ծննդենէ ունել զհռովմայեցի ազատականութիւն[3]: Այսպիսւոյ առն ըն-

[1] Ընդ հակառակն ուր յառաջնում տեղւոջ (Իէ, 16) Թարշիշ ունի մերս, նոցայն Ասորէ Թարգմանէ, Syrus negotiator tuus.

[2] Գործք Առաքելոց, ԻԱ, 39:

[3] Նոյն Սուրբ Գիրք, ԻԲ, 28:

ծայող[1], միանգամայն և մայրաքաղաք մեծի աշխարհի միոյ փոքուն Ասիոյ գոլով, հարկ էր թէ և զմի 'ի բարձրագահ եկեղեցական աթոռոց ունիցի Տարսոն, որ և առաջին զնորին Պօղոսի զաշակերտ՝ զՅասոն՝ ընկալաւ իւր հովիւ. և յետոյ եղև արքեպիսկոպոսանիստ կամ մետրապօլիտ ընդ պատրիարքութեամբ Անտիոքայ, ունելով ընդ իւրև թեմս եպիսկոպոսականս եօթն[2]: Յետ Ժ դարու հաստատեցաւ 'ի նմին և Հայոց աթոռ արքեպիսկոպոսական, յոր բարձրացաւ 'ի յետին քառորդի ԺԲ՞ հոգեկիրն Պօղոսի, և մերս եկեղեցւոյ և համօրէն Կիլիկիոյ ջահ պայծառ՝ Ս. Ներսէս Լամբրոնեցի: — Գահերիցութիւն քաղաքին և բազմութիւն քրիստոնէից 'ի նմին՝ պահանջէր յառաջին դարս անդ հալածանաց՝ և ոչ սակաւ երախայրիս վկայից 'ի Քրիստոս, անդանօր նահատակեալս կամ անդ դատեալս և այլուր կատարեալս. որպէս տիկինն Արնբուսա առ Վաղերիանոս կայսերաւ, Կիւրիանէ և Յուլիանէ՝ առ Մաքսիմիանոսիւ, Պեղագիա կոյս առ Դիոկղետիանոսիւ, առ որով և Ս. Վոնիփակիոս, և ծանօթագոյնքն մեզ Ս. Տարագոսեանք. և երիցագոյնք քան զսոսա՝ աւանդեալ վկայուհիքն Զենայիս և Փիլոնիլլա՝ ազգականք և աշակերտք մեծի առաքելոյն Պօղոսի: — Յազատանալ եկեղեցւոյ 'ի հալածանաց՝ հաստատեցաւ կանոնօք մետրապօլտութիւն Տարսոնի, և վերադասութիւն քան զյօգունս 'ի ժողովս եկեղեցւոյ. անուանի գտաւ 'ի հմտութեան յեպիսկոպոսունս աթոռոյն՝ յելս Դ դարու՝ Դիոդոր վարժապետ Մոպսուեստացւոյն Թէոդորոսի, նաև ըստ մոլորութեանն: — Ի մուտս խաչակրաց յերկիրս յայս՝ կարգեցին և նորա արքեպիսկոպոս լատին, զոր հաւանութեամբ ընկալաւ և մերս Լևոն Մեծ 'ի թագաւորութեան իւրում, և երբեմն մերժեաց և դարձեալ հրաւիրեաց:

Յազգային մերում պատմութեան՝ յիշի 'ի կէս Դ դարու Արքեղայոս նախարար Դ Հայոց, սպանիչ Ս. Արիստակիսի, փախստեամբ ապաւինեալ 'ի Տարսոն: Ի նմին դարու նշանաւոր եղև Տարսոն գերեզմանելով զՈւրացողն Յուլիանոս, զսպանեալն 'ի մարտին Պարսից, և զյաջորդ նորին Յովիանոս կայսր, որ և աստէն իսկ մեռաւ. որպէս և յառաջ քան զնոսա՝ կայսերքն Տակիտոս և եղբայր նորին Փլորիանոս, և Մաքսիմիանոս. որովք յայտ լինի՝ զի ոչ լոկ նահանգի կամ աշխարհի միոյ գլխաւոր քաղաք համարէր Տարսոն, այլ և մի 'ի մեծագունիցն՝ 'ի լայնածաւալ ինքնակալութեան Հռովմայեցւոց և Բիւզանդացւոց, զի և անդ դադարէին երբեմն ինքնակալքն. նաև իշխեցին ոմանք անդ ապստամբել և թագ կապել, որպէս Լէոնդ առ Զենոնիւ, յամի 484, Աթենոդոր առ Անաստասաւ, յամի 497: — Յետ Զ դարու Մաւրիկ կայսր նորոգ շինեաց զտաճար Ս. Պօղոսի: Ի սկիզբն Է՞ Խոռեամ զօրավար Պարսից առ Բ Խոսրովաւ՝ էառ զՏարսոն, և ապա դաշամբ եթող 'ի Հերակլ կայսր: Ի սմին դարու նոր աշխարհակալքն Արաբացիք յամառ պնդութեամբ ընդ երկար քան զայլ քաղաքս Կիլիկիոյ կալան և պահեցին զՏարսոն, ոչ միայն ոստիկանս կարգելով 'ի նմա, որպէս և յայլ աշխարհս, այլ և ոմանց յամիրապետաց անձամբ եկեալ և նստեալ 'ի նմին. ուր և մեռաւ Մէմուն՝ յամին 833 (31 յուլ.), և որդի նորա որ անդ իսկ ծնեալ էր՝ մեծաւ վրէժխնդրութեամբ մաքառեցաւ ընդ Յունաց: Յետ ոչ բազում ամաց (965) Նիկեփոր կայսր օգնութեամբ Զմշկիկն Յովհաննու զօրավարի իւրոյ՝ պաշարեալ և սովեցուցեալ էառ զՏարսոն, ելից քրիստոնէիւք, և զդրունս նորին և զՄոպսուեստեայն տարեալ 'ի Կ. Պօլիս՝ 'ի նշանակ յաղթութեան կախեաց զպարսպաց և զՈսկի դրանէն: Յայս ակնարկէ Պանդալէոնի Հայոց վարդապետի՝ 'ի նմին ժամանակի գրելն. «Յաղթող 'ի պատերազմունս հեթանոսաց (կայս»րըն) որ ջարդեաց զլուծ իսմայելական՝ որ 'ի վերայ »պարանոցի քրիստոնէից, և խորտակեաց զկզակս նո»ցա, և առ զանառիկ ամրոցս նոցա. մանաւանդ զմեծն »և զականաւորն և զհռչակաւորն զՏարսոն Կիլիկե»ցւոց ... այլ և եբեր զդուրս ... մոզպետաց նոցա՝ 'ի »պատիւ սրբոյն Սոփեայ»: Ընդ նոսին թափեաց և զխաչանշանս՝ զոր յիննուն ամաւ յառաջ (877) կողոպտեալ էին Արաբացիք՝ հարկանելով առ Տարսոնիւ զանզգամ զօրավարն Ստիւպիոտ: Յաջորդ յաղթողացն վասիլ Բ՝ առաւել ևս ամրացոյց և յապահովեաց զՏարսոն և զօրս զնովաւ ընդ ձեռամբ Յունաց, ուրանօր և ձմերեաց յամի 999-1000. յայնմհետէ կուսակալք Յունաց կային 'ի Տարսոն ցդար մի ժամանակի: — Ի նոցանէ էր 'ի վերջին քառորդի ԺԱ դարու՝ Ապլղարիպ արծրունի որդի Խաչկայ. առ որով, կամ խուն մի յառաջ (1073), Գէորգ կաթողիկոս օգնական Մեծի Վկայասիրին՝ մերժեալ 'ի սմանէ՝ «գնաց վիրաւորեալ 'ի Տարսոն քաղաք »և անդ մեռաւ»: — Յառաջնում գալստեան խաչակրաց՝ յառաջ իսկ քան զառումն Անտիոքայ՝ գունդ եռանդնոտն Տանկրետեայ՝ նախաժամեան եղեալ եհաս 'ի Տարսոն, և օգնութեամբ Հայ բնակչացն վանեալ զսակաւաձեռն Թուրք պահապանս՝ կործեաց և պարզեաց 'ի վերայ պարսպացն զնշան իւր. զհետ նորա հորդանեալ Պաղուին եղբայր Կոփրեդի առաջնորդին խաչակրաց, հզօրագոյն ևս գնդաւ, ինքեան համարեցաւ իրաւունս նշան կանգնելոյ, և առ ոտն եհար զՏանկրետեայն. տեղի ետ սա և գնաց տիրացաւ Մամեստեայ: Յետ սակաւուց եկին անդր երեքհարիւր ուխտաւորք, և ոչ եղեալ ընդունելի 'ի քաղաքն՝ կոտորեցան 'ի Թուրքաց. ընդ այս զայրացան ամենայն քրիստոնեայք 'ի վերայ Պաղուինայ. այլ նա կամելով նախ 'ի չքմեղս լինել որպէս թէ դաշն կռեալ էր ընդ Թուրքաց, ապա ստիպեալ՝ եհար զմնացեալսն 'ի նոցանէ 'ի քաղաքին, և համարեցաւ սրբել զկեղտն: Յայնմհետէ Տարսոն ցմէջ կոյս ԺԲ դարու՝ երից հզօրաց նպատակ եղեալ վիճի՝ Յունաց, փռանկաց և Հայոց, յետնոցս ապա անհակառակ կամ անկորզելի վիճակեցաւ. և նախ ասպետանմանն յանդուգն Պարոնին Լևոնի, յամի 1130, այն որ

[1] Քանզի Տարսոն ընդ Հայոց իշխանութեամբ եղև յետոյ, համարձակի շատաբանն Գր. Տաթևացի՝ ասել ('ի Քարոզագիրս Մեկն. Մատթէի), «Պօղոս՝ որ էր քաղաքաւն Հայեցի, 'ի Տարսոնէ»:

[2] Որք են, Պոմպէուպոլիս, Սեբաստիա, Կոռիկոս, Ադանա, Աղուսիա, Մալլոս և Զեփիւրիոն: — Յայլում թեմագրութեան Զ դարու՝ հինգ եպիսկոպոսք միայն գրին Տարսոնի. Սեբաստիա, Մալլոս, Թինա, Կոռիկոս, Պոդանդոս կամ Պոդեքրատոս: իսկ Նիլոս Դոքսապատրեան՝ թարգմանեալն 'ի մերոյս Լամբրոնեցւոյ գրէ վեց:

« Մամեստիայ եղև տիրեալ
Եւ 'ի Տարսոն մեծըն հասեալ ».

սոյնպէս Հայկազուն որդին և թագաւորազգազունն Թորոս Բ՝

« Իմքըն զօրձեալ զօր ժողովեալ
Զերկելին Տարսոն առեալ » ։

— Յաւուրս կարճատև իշխանութեան եղբօր սորա Մլեհի և եղբօրորդւոյն Ռուբինի Բ՝ զերծեալ էր Տարսոն 'ի ձեռաց նոցին՝ և անկեալ ընդ իշխանութեամբ Անտիոքայ Յոյնին. վասն որոյ անդր իբրև յանկարծահաս անցեալ Լևոն՝ զանգիտեալ 'ի քաղաքէն ամենայն առ եղբայր իւր, և անտի գնայ 'ի Կ. Պօլիս (1181). այլ յետ երկուց ամաց (1183) Բզենդն ինքնակալ վաճառեաց զայն Ռուբինի ծանր գնոյ, զի ոչ կարող ընդ երկար պահել զայնպիսի բազմակեայ և մեծ քաղաք, 'ի մէջ կալուածոց հզօր իշխեցողին լերանց[1] ։

104. Համեալ ցայս վայր յիշատակաց քաղաքիս, և մինչև յառաջեալ յազգայինս, 'ի դէպ վարկանիմ չուրջ առին արկանել 'ի Տարսոն, և քննել զոր 'ի նմայն մնացուածս շինուածոց՝ յառաջնոց անտի նորին տիրապետաց, որոց զայր 'ի զարդ նշխարելով՝ առակացին նշմարին և յայժմուս հետք և հիմունք։ Եւ նախ, վասն զիրց քաղաքին՝ զորմէ վէճ է՝ յաւէ լիցի. քանզի որպէս 'ի վերդ նշանակեցաք՝ բառ բանի միոյ 'ի մերոցս իսկ, զոր և Ալիշին կրկնէ, եթէ Տարսոն « պէս զանձակ Բարեկենի. զի և « ընդ սորա մէջն անցանէ գետն Կիւդնոս, որպէս Արածանի ընդ մէջն Բաղեշնի ». արդ զի քաղաքն զառնի յանդէ կամ յարևմտից միայն գետոյն, թուեցաւ ոմանց յայժմու գիտնոց՝ եթէ տեղափոխեալ է գետոյն. բայց



80. Տէօնիւք-թաշ. Գերեզման Սարդանապաղու ?.

այլք անսպառական համարին և զգետն և զքաղաքն. իբրու զի ոչ գետն զգնացին ընդմիջէր զքաղաքն, այլ առաւել ինչ նորին, որպէս և զորգիս է տեսանել. մանաւանդ զի պարիսպքն և ամենայն հին շինուածք՝ կան յայնկոյս գետոյն, և յահեկէն մեծ ինչ ոչ երևի. յիշելի է և այս՝ զի այժմեան Տարսոն 'ի միում մի կամ 'ի քառորդ հնոյ քաղաքին պարագրի, և մեծագոյն մասնն հաւասարեալ է հողոյ կամ ծածկեալ հողակուտով, իբր 132 ոտնաչափ թանձրութեամբ, մինչև ոմանց իսկ և կամարաց հին շինուածոց՝ հաւասարել նորոց յատակին։ — Հնագոյն 'ի շինուածս այժման էր առել զպարիսպսն՝ եթէ չէին բազում անգամ կործանեալք, հազիւ 'ի հիմանցն թողով նշմար ինչ վաղնջական հնագանդերոց անոյ։ — Գիտուոր և եզական մնացուած և կարի հին 'ի Տարսոն՝ է անուանեայն 'ի Թուրքաց Տէօնիւք-թաշ[2] կամ Տէյիք-թաշ, և համարեալն հասարակօրէն Գերեզման Սարդանապաղու, 'ի Հր. Արլ. կողմն քաղաքին, մերձ 'ի Տէմիր-գաբու (Երկաթի դուռն), և կայ զորգիս 'ի պարտիզի ուրեք. շինուած մեծ և երկար քառակուսի, իբրև 42 Զ. երկայն, 20 Զ. լայն, և իբր 8' բարձր. զանգուած հեղեղաքարի, կրի և աւազոյ. յերկարին ծայրն կան քառակուսի փոքրիկ 'ի նմին զանգուածոյ կազմեալք, մին մեծ և հողով լցեալ, միւսն փոքր և դատարկ, յորում և երեք քառակուսի փորուածք են, առ որովք երևին յորմն խորշք կամ գոգք, որպէս թէ տեղիք հաստատութեան մեծթից՝ բարձրագոյն զձեղուն շինուածոյն, որոյ մի միայն մնաց երևի 'ի Հս. Մ. արտաքոյ՝ 10 ոտնաչափ լայն. հանդէպ Հս. Արլ. կողման շինուածոյն կայ որմն զուգահեռական,

1 Գուլ. Տիւր. ԻԲ. 24. Tarsum... quam... Græcis receperat, Rupino Armeniorum Satrapæ potentissimo, qui ejusdem regionis urbes reliquas possidebat, multarum pecuniarum tradidit, interventu, consulte id faciens : nam cum esset ab eo remota nimis, et prædicti Rupini terra in medio constituta, non nisi cum difficultate et infinitis sumptibus ejus curam Princeps gerere poterat, quod prædicto nobili viro erat facile. — Gul. Tyr. XXII. 24.

2 Այսպէս անուանեալ բառ առանցութեան Թուրքաց ոմանց, վասն հինն 'ի վեր չրջեալ շինուածոյն՝ անիւնից մարգարէին իւրեանց, 'ի պատահմա ամանառնան անդրզաբ զիւրն ։

և անդր քան զայն նոյնպէս զուգահեռական նմին այլ որմն կամարակապ ձեղուամբ՝ որ կործանեալ է։ Զանգուած շինուածոյն խառն 'ի խառն է, մէն իբր կէս Զափ թանձրութեամբ. որոց 'ի ստորեւն ագուցեալ են բեկորք սպիտակ և պաղպաջուն կճոյ, որպէս և այլ ուրեք ուրեք, թէ և արդ ծածկեալ են։ Երեցուն յիշեալ մասանց շինուածոյս՝ միանգամայն 115 Զ. լինի երկայնութեան. թանձրութիւն որմոյն 6 1/2 Զ. երկայնութիւն մեծի քառակուսի փոսոյն 23 Զ., լայնութիւնն 16 1/6. փոքուն երկայնութիւն 18 Զ., լայնութիւն 11. բարձրութիւն նոցին 7, 60։ Ոչ կարացին քննողք և գիտունք ստուգել զինչութիւն շինուածոյս, այլ յոլովք միաբանին գերեզման սեպել, ոմանք Սարդանապալու, այլք Յուլիանու. այլք համարին մեհենատեղի կամ բերդ կամ գերեզման ոչ միոյ՝ այլ բազում աւագ որերոյ. և հաւանագոյն ևս՝ ատրուշան մեծ կամ մեհեան արեգական դից Տարսոնի, խառնակալոյց պաշտամամբք. բայց յամենայն գիտնոց վկայեալ է աննման և նորաձև իմն լինել շինուածոյն[1]։

Ագուգայ. հռոմէական շինուած կամարակապ, մերձ յայժմեան շուկայ քաղաքին ընդ երկայնութիւն փողոցի միոյ։ Կայ և այլ փոքր ագուգայ արտաքոյ քաղաքին՝ 'ի ձախմէ գետոյն, զոր արդ բերդ անուանեն բնակիչք կողմանս, երկրքին ևս պատեալ զանգուածով խճախառն և աւազակուռ։ Ցայտնեցան ընդ յատակաւ քաղաքին կամարակապ ջրանցք լուալեաց, գլխաւորն 4 Զ. բարձրութեամբ և 2 1/2 լայն, այլք 1 1/2 բարձր և կէս Զ. լայն. ամենայնն 'ի գետ անդր տանելով։ — Հռոմէական շինուած երևի և կամուրջն եռակնեայ՝ յարևելից քաղաքին, նորոգեալ անշուշտ յայլևայլ ժամանակս։ — Զկք այլ ինչ շինուած հին կանգուն մնացեալ 'ի Տարսոն, ոչ մեհեանք և ոչ կամարք յաղթանակաց. բայց միայն արձանագիրք 'ի զերծ քարինս՝ ագուցեալք ուրեք ուրեք 'ի նոր շինուածս, պիտանիք հնասիրաց, այլ ոչ կերպարանիչք քաղաքին։ Արտաքոյ պարսպաց քաղաքին կան և այլ ինչ հետք հռոմէական գործոց. 'ի հարաւային արևելեան կողման բլուր մի է Կեօզլիւկ-գալէ անուանեալ, և երևի 'ի հնումն լինել գերեզմանատեղի մեծ, յորում բրեալ՝ գտանին կաւեղէն պատկերք և քանդակք հեթանոսականք բազում յոյժ, շատք յունական քան հռոմէական։ — Ցարևելեան կողս բլրին է Մարգանց կամ



81. Դուռն Խանձի-գափու.

կռուանոց, զոր յիշէ և Ստրաբոն, կիսաբոլոր ձևով, կոփածոյ քարամբք 'ի ստորեւն, խճախառն 'ի վերնակողմն. բայց գրեաթէ մեծաւ մասամբ 'ի բաց հանեալ և 'ի նոր շինուածս վարեալ են քարինքն։ — Ի հիւսիսոյ նորին է Ասպարէզն, արդ յագարակ փոխեալ մշակելի. ուր կատարէին առ կայսերօք խաղք, հանդէսք և ժողովք. զի Տարսոն էր ժողովատեղի խնամակալ տեսչութեան քաղաքաց Իսաւրիոյ, Կարիոյ և Լիկայոնիոյ, հաստատեալ անդստին 'ի ժամանակէ իշխանութեան Յունաց՝ յառաջ քան զտիրել Հռովմայեցւոց, և կոչէր ժողովն Κοινόν Κιλικίας, Կիլիկեան Դաշնակցութիւն։ — Ի բիւզանդական շինուածոց՝ նշանաւոր է մերձ 'ի Կեօզլիւկ գալէ, Խանձի-գափու կոչեցեալ դուռն, 'ի Հր. Մ. պարսպաց քաղաքին, յորոյ ձախմէ կայ խորշ մեծ տեղի անդրւոյ 'ի բաց բարձելոյ։ Բիւզանդական է և Բերդն Տարսոնի, 'ի Հս. Եւ. հուպ 'ի քաղաքն, 'ի հարաւոյ ունելով զդուռն, կրկին պարսպօք պատեալ և խրամով. մարթ էր արդեօք գտանել 'ի նմին և հայկական յիշատակս՝ եթէ չէր 'ի ժամանակի եգիպտական մարտից ապարտեալ 'ի ճայթմանէ վառօդարանի միոյ, և յետ այնր քանդեալ 'ի վիմացն։ Գտանին յայլևայլ կողմանս քաղաքին նշխարք քանդակաց, քարանկար յատակաց հռոմէական և բիւզանդական դարուց, այլ արձանագիրք ոչ, կամ դոյզն ինչ։ — Պատուականագոյն 'ի մնացուածս հնութեանց համարեցաւ շիրիմ մի սպիտակ կճեայ՝ յորում կային դեռ ոսկերք թաղելոյն, և առաքեցաւ յԱմերիկացւոց գունցէն՝ 'ի մայրաքաղաք իւրեանց Նոր Եօրք, յամի 1871։ — Նշանագոյն շինուած թերևս քան զայլս 'ի

1 Տիկինն Պելճիոյօզօ՝ որ 'ի պանդխտութեան իւրում 'ի Փոքրն Ասիա, եկն և 'ի Տարսոն և ետես զտեղիս զայս, յամի 1863, լաւ ևս համարեցաւ տգիտանալ քան քննել. բայց խոստովանի զի զգայ տխրութիւն իմն տարտամ, և անստուգութիւն ոչ անհաճոյ։ — On éprouve, en parcourant cette mystérieuse enceinte, une incertitude vague et mélanconique qui vous plonge dans les abimes du passé sans vous enchainer ni à une époque, ni à une nation définie, incertitude qui n'est pas sans un charme singulier. — Belgiojoso, 403.

յիշեցելոցդ՝ իցեն Գեռմանայարկք կամ Գեռմանայաճիւնք Տարսոնի, զորոց ոչ ունելով կարեւոր և փափագելի ծանօթութիւն, թողում յառ յապայն ստուգութիւն:

105. Որպէս 'ի վերդ նշանակեցաւ, 'ի յետին քառորդի ԺԲ դարու անկաւ Տարսոն հաստատապէս ընդ բարձրացելոյ ձեռամբ Ռուբինեանց, և եկաց իբրև ամս երկերիւր. աւագին յիշատակք քաղաքին յայսմ հայկական պարագայի՝ եկեղեցականք են քան քաղաքականք. առաջնոցն եպիսկոպոսաց՝ որ 'ի վերջին քառորդէ Ժ դարու մինչև ցելս ԺԲԻՆ կային, ոչ հասին մեզ ոչ անուանք ինչ և ոչ գործք. բայց զի արդէն բազմութիւն էին Հայք կողմանցն՝ վասն այնորիկ կարգեցաւ անդ արքեպիսկոպոս 'ի Խաչիկայ կաթողիկոսէ. իսկ յայսմ նորոգ ժամանակիս, աւագին՝ Գրիգոր Ապիրատ կարգեցաւ տեսուչ Տարսոնի՝ յաջորդակցէ իւրմէ 'ի Գրիգորէ Տղայէ, յամբառնալ իւրում 'ի գահ կաթողիկոսական. այլ, որպէս երևի՝ յետ սակաւ ամաց փոխեալ Ապիրատայ 'ի Թեմ Կապադովկիոյ, Տարսոնի եկեղեցւոյ վերակացու երկրորդն Պօղոս՝ Ներսէս Լամբրոնեցի, զորոյ զհանդէս տեսաք 'ի տեղագրի հայրենի նորուն դղեկի. յետ նորա յերկուս որոշեցան աթոռս՝ Տարսոն և Լամբրոն: Առ Ներսիսիւ և Լեւոնիւ՝ երկպարումբք գերապանծ գլխովք եկեղեցական և թագաւորական գահոյց Հայաստանեայց, թերևս մեծ եղեն փառք Տարսոնի՝ քան ընդ երբէք. յառաջ քան զզաւակակալել Լեւոնի՝ եկեալ էր 'ի Տարսոն և ինքն քահանայապետն Հայոց՝ ձեռնադրողն Լամբրոնեցւոյն, որ և ընկալաւ (յամսեան հոկտեմբերի 1185 ամի) զթուղթ Լուկիոսի Պապի և զգիրս կարգաց Հռովմայ եկեղեցւոյն, և զընծայսն՝ միթր և պալիուն, 'ի ձեռանէ նուիրակի իւրոյ Գրիգորի եպիսկոպոսի Փիլիպպուպոլսոյ, առաքելոյ առ նոյն ծայրագոյն քահանայապետ. և ետ Ներսիսի թարգմանել 'ի լատինէ զթուղթն



82. Տէմիր-գափու կամարադուռն.

և զգիրսն՝ 'ի միջս բարբառ: Յետ ամաց հնգից 'ի խաղալ գնալ յայս կողմ Փրեդերիկոսի Ա. կայսեր, դարձեալ եկն այսր կաթողիկոսն հանդիպել նմա, առաքեալ յառաջագոյն զպաշտօնակալն յանձնայնի զՆերսէս. այլ 'ի հանդիպել զմխեալ արկածից մահու կայսերն 'ի Սելեւկիա՝ դարձաւ առ տրտմութեամբ յաթոռ իւր, և վաճառաւոր եղև միոյ յեկելոցն ընդ կայսեր, արքեպիսկոպոսի «Մուն» ստեր քաղաքի, որ ունէր իւր զատ ձեռագիրն զինքն՝ հա» զար հնչեալ». յորմէ և ընկալեալ զպատգամն կանոն թագաւորօրհնէիցն, թարգմանեաց, և նովիմբ յետոյ օրհնեցաւ Լեւոն, առընթեր կալով և թարգմանչին, որով և աւագին թագաւորանիստ քաղաք Հայոց մարթ է անել զՏարսոն: Տաճարն մեծ՝ յորում կատարեցաւ մեծայն հանդէս՝ յայտ է յանուանէն Ս. Սոփիա, կառուցեալ 'ի Յունաց, և ըստ սովորութեան՝ նուիրեալ Աստուածայնոյ իմաստութեան. այլ կոչէր և Ս. Պետրոս, թերևս յաւելեալ 'ի նմին իսկ 'ի Լեւոնէ, վասն նշանի առաքելապետին զոր ընկալաւ 'ի նորին յաջորդէ: Վիլտեպրանդոս որ յետ երկոտասան ամաց օծման Լեւոնի եկն այսր, 'ի միջոց կամ 'ի կենդրոն քաղաքին առնէ զկաթողիկէն Տարսոնի, յոյժ վայելչազարդ և պաղպաջուն հնէիւք. և թէ 'ի ծայր եկեղեցւոյն անդրի մի էր, և 'ի նմին՝ հրեշտակայինն ձեռաց նկարեալ պատկերն այն Տիրամօր՝ որ զԹէոփիլոս զդաստացոյց. և զարմանագործ իմն տեսանէր 'ի մեծամեծ վտանգս երկրին՝ արտասուս բղխէր, վասն այսորիկ և մեծապէս պատուիւր յամենեցուն[1]: Զայս եկեղեցի շնորհեալ էր Լեւոն արքեպիսկոպոսին Լատինաց՝ 'ի ժամանակի թագաւորութեանն,

[1] In fine sui (ecclesiæ) habens quamdam statuam, cui imago Dominæ nostræ angelicis manibus est dipincta, quæ in maxima ab hominibus illius terræ habetur veneratione: sicut enim multi et omnes videre consueverunt; hæc imago dum aliquod grave periculum illi terræ imminet, coram omnibus et magna quantitate solet lacrymari. Hæc est illa quæ dicitur quæ Theophilum reformavit. — WILDEBRAND. — Թէոփիլոսդ մի-

յետոյ 'ի բաց էառ։ Արտաքոյ եկեղեցւոյն՝ յանկեան միում, առէ նոյն Վիլպէպրանտ, կայ շիրիմ դստեր Մահմէտի, մեծարեալ յոյժ 'ի հաւատացելոց նորին. հաւանօրէն միոյ 'ի զարմէ ամիրապետացն էր բնակելոց 'ի Տարսոն։ Բազմամարդ առէ զքաղաքն և պարսպապատ, այլ հնացեալ և խարխարեալ. բայց ունէր և բերդ չէն և ամուր, ուր Ս. Թէոդորոս նահատակեցաւ, վասն որոյ և եկեղեցի է անդ յանուն նորին Ս. Թէոդորոսի։ Ի քաղաքի աստ ընկալաւ Լեւոն զյիշատակող բանիցս յամի 1211, ընդ նմին և զդեսպան դքսին Աւստրիոյ, և բնակեցոյց յերկրի իւրում եօթնեակս ութևտասն։ — Ի մայր եկեղեցւոջ Տարսոնի 'ի Ս. Սոփիա եղեն և մեծահանդէս թագաւորօրհնէք երկուց վեհագոյն յաջորդաց Լեւոնի, փեսայացելոյն իւրոյ և թոռին, այսինքն Հեթմոյ Ա, և Լեւոնի Բ, որպէս նշանակեն արքունի պատմիչքն. յիշելով վասն առաջնոյն, զի յամի 1226 « Ժողովեցան Կոստանդին կաթողիկոս և եպիսկոպոսք և իշխանք 'ի Տարսուս և դրին թագաւոր ... զպատանին Հեթում... և եղև ուրախութիւն Հայոց. և եղին մեծ սէր ընդ Հոռմայ պապն և ընդ Ալամանաց օնբրունն [1] » (empereur)։ Վասն երկրորդին, զի « Ի Թու. ՉԻ, յամսեանն յունուարի վեցն (1271) օծին թագաւոր Հայոց զԼեւոն որդի թագաւորին Հեթմոյ, 'ի մայրաքաղաքն Տարսոն, 'ի սուրբն Սոփի. և յամենայն ազգաց քրիստոնէից անդ հաւաքեալ կային, առ 'ի տեսանել զարժանի տեսանելոյ ուրախութիւնն. որ և բազմաց մեծութիւն շնորհեցաւ յօրն յայն, և բազումք 'ի կապանաց բանտից ազատեցան [2] »։ Ի յաջորդաց սոյին յիշի և օծումն Օշնի 'ի Տարսոն, յամի 1308. թուի թէ և այլք ոմանք. բայց զլխաւորացն աստանօր կատարելով զմեծագոյն զայս հանդէս քաղաքական՝ յայտ լինի Տարսոնի յարամնալն 'ի պատուի և 'ի բարգաւաճանս մայրաքաղաքութեան, և դիւրամատոյց ևս գոլով եկաց 'ի ծովէ և 'ի ցամաքէ՝ քան զՍիս, յինքն հաւաքել զկղզնականս և զհիւրս 'ի պայծառութիւն տօնից, յորս որբափայլէր հարսն Քրիստոսի՝ և անուանակիրն նորին իմաստութեանն Հօր՝ Ս. Սոփիա։ Իսկ յետ բարձման թագաւորութեանն Հայոց՝ թուի իմն և ինքնին բարձեալ կամ ծածկեալ. զի ոչ ևս յայտնի յիշատակ նորին և տեղի. այլ կարծի լինել 'ի տեղւոջ՝ յոր Ռամազանեանք կանգնեցին զմեծ մզկիթն՝ Ուլու ճամի։ — Ի վերոյգրեալ վկայութեանցդ յայտնեցաւ Տարսոնի բազմամարդութիւնն, տեւեալ 'ի ժամանակէ անտի տիրապետութեան Բիւզանդացւոց, որ է ասել, թէ և 'ի նուաճել Հայոց՝ մեծ մասն բազմութեան բնակչացն՝ Յոյնք էին, որպէս վկայէ և Լամբրոնեցին. որք՝ և յետ մահուան Մեծին Լեւոնի հրապուրեալ միաբանեցան ընդ անհաւանոն վարչութեան Պայլին Հայոց Կոստանդնի, զլուխ ինքեանց ունելով ըզմեծ իշխան Պարոն Վահրամ, և գումարեալ հինգ հազար արանց կամէին յանկարծոյն 'ի վերայ հասանել Պայլին. այլ սորա իրազգաց լեալ կանխեաց, պատահեցաւ ապըստամբացն 'ի սահմանս Ատանայ քաղաքի, եհար և փախստական տարաւ մինչև 'ի Տարսոն. որոց անկեալ անդր « և փակեալ զդրունսն ելին 'ի պարիսպն, և պատերազմէին ընդ վանիչսն իւրեանց. իսկ այր ոմն 'ի քաղաքին Վասիլ անուն բանաստու եղեալ առ Պայլն, և նա խոստացաւ նմա զինչ և կամեսցի. և 'ի գիշերի բացեալ զդրունսն եմուտ Պայլն և զօրք իւր 'ի քաղաքն, և յաւուրն առին զինչս Յունացն. իսկ իշխանքն այն փախեան 'ի քաղաքէն և ելին 'ի Կղայն, որ էր գեղեցիկ և անըմբռնելի ամրութեամբ։ Իսկ իմաստունն Կոստանդին Պայլն Հայոց՝ առանց մարտի և զնոսա հաւանեցոյց բանիւք և ընդ ձեռամբ էած, և եդ 'ի բանտի. էր 'ի նոցանէ որ ազատեցան, և էր որ անդ վախճանեցան [3] »։ — Ի հաստատել թագաւորութեանն Հեթմոյ, յամի 1228 ձեռն էարկ նորոգել զպարիսպս Տարսոնի. յոր ոչ ժամանեաց Լեւոն, զբաղեալ յայլ շինուածս. սակայն վէմ մի արձանին՝ բարի բաղդիւ պրծեալ և ուրեք ուրեք մաշեալ, զարդիս ագուցեալ յորմն եկեղեցւոյ Ս. Աստուածածնի՝ վկայէ մեզ զայս. և է վէմն 0,75 Զ. ընդ երկայնն, 0,55 'ի բարձրութիւն. երկայնութիւն տառիցն 08 1/2 կամ 9 հարիւրորդ. և այս է արձանագիրն.

· Ի ԹՈՒ ՀԱՅՈՑ·
ՈՀԷ· ՆՈՐՈԳԵՑ
ԱՒ ՊԱՐԻՍՊՍ ՏԱՐՍ
ՈՆԻ ՁԵՌԱՄԲ ԹԳ·
ՀԱՅՈՑ ՀԵԹՄՈՅ·

— Պարսպացդ զուգակից համարի և սրակամար վայելուչ դուռն Տէմիր-գափու։ Ամրութիւն նորաշէն պարըսպացն փորձեցաւ յետ սակաւուց, երկիցս պաշարեալ 'ի սուլտանէն Իկոնիոնի (1245-6). յերկրորդումն նուագին՝ երկերիւր վաթսուն հազար! մարդ առէ Գունդստապլն զԹիւ հրոսուն, որք աւուրս բազումս « բոլոր պատեցին զՏարսուս. թագաւորահայրն և ես Սմբատ Գունդստապլս՝ մտաք 'ի Տարսուս. և եթէ զամէն նեղութիւն բարնաց ու զկռիւ գրեալ էաք՝ նա կարի շատ էր լինելոց. հայնց որ 'ի չրկլտին դեհն ու 'ի չրեկին աղէկ նեղեր կեց մի փլուցին զպարիսպն. շատք մեռան յերկուց կողմանց, բայց 'ի դրացէն՝ հարիւրապատիկ. զի ունէաք ընդ ներքս աղէկ ֆռանկի չարխաւորք։ Եւ ապա եկն դեսպան 'ի Թաթարէն՝ որ Թողէին ելանել. նա չէաք 'ի լսել, վասն զի զքաղաքն առած? ունէին »։ Ի նմին ժամանակի մեռանի սուլտանն Խիյաթէտտին, զոր

չեալ՝ աւանդապահ էր եկեղեցւոյն Ատանայ, և առ երկեղածութեան ոչ կամեցաւ ընդունել զձեռնադրութիւն եպիսկոպոսութեան. այլ յորժամ ընտրեալն փոխանակ նորա եբարձ 'ի նմանէ և զաւանդապահութիւնն, դիւական խայէութեամբ յուրաստ եկաց և 'ի հաւատոցն, և անկաւ 'ի հնարս դիւթականս. բայց յետ սակաւուց 'ի միտս եկեալ՝ ուխտիւք թախանձեաց զՏիրամայրն՝ առաջի պատկերին, և ընկալաւ ոչ միայն թողութիւն յանցանացն, այլ և զդրժնեայ թուղթ դաշանցն՝ զոր տուեալ էր սատանայի՝ յուրացութեանն. և խոստովանեալ առաջի եկեղեցւոյն՝ 'ի հուր էարկ, և սրբութեամբ կնքեալ զկեանսն (յամի 538), պատուի 'ի Յունաց ընդ Սուրբս, 'ի 4 փետրուարի ամսեան։

1 Սմբատ պատմիչ։

2 Պատմիչն Կիլիկիոյ։

3 Պատմիչն Կիլիկիոյ։

ոչ գիտէին մերայինք՝ մինչ ամիրայք նորա խնդրեցին 'ի Թագաւորէն Հայոց զՊռականա բերդ. և ընկալեալ՝ 'ի բաց գարձան. և « որչափ 'ի վերայ մեր կացին, ասէ » պատմիչն, կաթ մի անձրև չեկաւ. երբ որ սէրն եղաւ՝ » նա 'ի քսան օր գիշեր և ցորեկ՝ չկտրեցաւ, և եղև ա- » մեն աշխարհ մէկ ծով. յայնժամ որ եղան՝ հարիւր հա- » զար մարդ աւելի ոտով՝ [1] սպանին, և ջրախեղդ սա- » տակեցան. շատ պիղծ էաք այրել իւրեանց [2]՝ թէ չէաք » երդուեալ » : — Ըստ մահուան Հեթմոյ՝ յաւերածու արշաւանին 1276 ամին, Եգիպտացիք՝ ընդ այլսն

« Եւ ըզՏարսոն զմեծն աւերեալ
Ջերւեյին եւ հաշակեալ,
Զսուրբ Սոփիա տաճարն այրեալ,
Եւ զքաղաքն աւար առեալ » [3].

յայտ է զի նորոգեալ վերականգնեցաւ քաղաքն, ան- շուշտ և Սուրբն Սոփիա, թէ և ոչ հաւասար առաջին




83. Խաչարձան յարմն եկեղեցւոյն Տարսոնի.

փառացն. և յայլում չար պատեհի՝ Թուի կրկին աւե- րեալ և անյայտեալ՝ ըստ վերոյգրելոյս: — Յելս ԺԳ. դա- րու և 'ի սկիզբն ԺԴ՝ Ալինախ արգանդակից եղբայր Օշնի Թագաւորի՝ տէր էր Տարսոնի, յորժամ օծան սա անդ Թագաւոր Հայոց (1308). որ և յետ մահուան առա- ջին կնոջն՝ (Բ Զապել դշխոյի, 1310-11), « ուղարկեաց » (յամի 1316) և եբեր Օշին Թագաւոր զեղբօր դուստրն » Ըռէ Ըռուպերդին (Re Ruberto Թագաւորի Սիկիլիոյ), » և պսակեցաւ 'ի Տարսուս » . այլ 'ի միւսում ամին, 1317, ողբալի մահուամբ զրաւեցաւ 'ի կենաց սիրելին այն (Ալինախ) եղբայր Թագաւորին. « զի պատճառ մա- » հուան նորա այս է. լողացեալ եղև 'ի գետն Տարսոնի. » և էր ընդ նմա 'ի լողկանալն՝ տաճիկ ձի մի, և եհար » զնա ոտամբն 'ի գլուխն. և այն եղև պատճառ մա- » հուան նորա... և կայ հանգուցեալ 'ի Դրազարկն [4] ». որ սուգ մեծ հասոյց Օշնի. զի ոչ միայն խեղեփ իւր էր, այլ և միայն մնացեալ 'ի բազմաթիւ եղբարցն: Ի միջոց ժամանակի մահուան երկոցուն երկուորեկացն, այն է յամի 1318, « Նլաւ խարամանն շատ հեծելով և գերեաց » զաահմանան Տարսոնի » [5]. այլ հարաւ 'ի դարձին 'ի կող- մանս Պոմպէուպօլսոյ: Ըստ մահուան Օշնի՝ համանուն նորին Օշին՝ տէրն Կոռիկոսի՝ Պայլ կարգեալ 'ի նմանէ դեռաբուսիկ որդւոյն՝ Դ Լեւոնի, ընդ մեծի մասին Կիլի- կիոյ ունէր և զՏարսոն ընդ իւրով իշխանութեամբ, մին- չև դաւեալ սպանաւ հրամանաւ նորին Լեւոնի զարգացե- լոյ (1329): — Ըստ նորա երևի ոտիկան կարգեալ Տար- սոնի՝ մեծ իշխանն և ապա Թագաւորահայրն՝ Պաղտին Մարաջախտ, զի արար չինութիւնս 'ի քաղաքին վտան- գելոյ 'ի ստէպ յարձակմանց Եգիպտացւոց: — Առ յե- տին Թագաւորաք Սիսուանայ՝ աղօտանայ ընդ այլսն և Տարսոն. այլ տակաւին յամի 1344 Կլեմէս Զ պապ խոս- տանայ Թղթով (յ'8 սեպտ.) առ Գուիտոն Թագաւոր՝ խնամ տանել եկեղեցւոյն Տարսոնի, որպէս խնդրեալ էր նորա 'ի ձեռն դեսպանի իւրոյ Փրանկիսկոսի Պիզա- ցւոյ, և գրէ վասն այնր և առ Նուիրակ իւր՝ պատրիարքն Կ. Պօլսի: Յաջորդ նորա Կոստանդին Թագաւոր՝ որդին Պաղտինի՝ անբաւական գտեալ 'ի պահել զդաշտակողմն երկրին, եւլք կամ վաճառեաց զՏարսոն՝ Եգիպտացւոց. յորոց յիշի ոտիկան կարգեալ Քոմարի ոմն, և յետ նո- րա յամի 1363՝ Մանձագ-Եուսուֆ [6] : Ոչ գիտեմ վասն լատին եպիսկոպոսի՞ քաղաքին իցէ և խոստումն Պապին, եթէ վասն եկեղեցւոյն Հայոց, որոյ գոգջիր 'ի նմին ամի յիշի եպիսկոպոս Վարդան անուն. իսկ նախորդք նորին արքեպիսկոպոսունք՝ ծանօթք 'ի գիրս՝ են, յամս,

972-90 Ա. Ա. կարգեալ 'ի Խաչկայ Ա. կաթողիկոսէ.
1173. Գրիգոր Ապիրատ (կաթողիկոսն).
1175-1198. Ներսէս Լամբրոնեցի.
1198. Ստեփաննոս.
? Ներսէս.
1230 ? -50. Գրիգոր.
1307-16. Յովհաննէս.
† 1320. Ստեփաննոս.
1324. Բարսեղ.
1342. Վարդան.
1365-70. Ա. Ա. առ Ուրբանոսիւ Ե.
1373. Ա. Ա. Դեսպան Թագուհւոյն Հայոց 'ի Վենետիկ.
1393. Ա. Ա. Ի Կիպրոս.

1 Այժմնքն աւելի քան 100,000 հետեակ զօրք:
2 Կարէաք, ասէ, բազում մեռս առնել նոցա, եթէ, և այլն:
3 Վահրամ Րաբուն:
4 Շարայարող ժամանակագրութեան Սամուելի Անեցւոյ:
5 Շարայարող պատմութեան Սմբատայ Գունդստապլի:
6 Ապիւլ-Մէհասէն, ըստ Տիւլօրիէի:

*Ի յետին ժամանակս ծանօթք լինձ*

1767-74. Յակոբ-Մեսրոպ Սրապեան.
1837. Յովհաննէս։

*— Իսկ Լատինաց արքեպիսկոպոսունք ծանօթք՝ են*

1110. Բոճեր.
1116. Ստեփաննոս.
1190. Ալպերտ.
1215. Պօղոս.
1279. Յովհաննէս.
1327. Դանիէլ *'ի Թերոոնայ.*
13... Անտոն, *վախճանեալ նախ քան զամն* 1358.
1358-1366. Պոնտիոս.
1366. Յովհան Pongherii.

*Եկեղեցիք յիշեալք 'ի նախնեաց 'ի Տարսոն, զատ 'ի վերոյիշեցելոց Ս. Սոփիայ և Ս. Թէոդորոսէ, են. Գ. Ս. Աստուածածին որ և Ս. Պօղոս, զի աւանդի չինեալ 'ի Պօղոսէ առաքելոյ յանուն Ամենասրբուհւոյն. Նորա աւեն տնկեալ և գծառն եղջերենի որ 'ի գերեզմանս Հայոց, մերձ յեկեղեցին, երկգրկաչափ շրջապատութեամբ փորոգեալ բնոյն, այլ ոչ աւելի քան երկդարեան հնութիւն համարին նմա բուսաբանք, ըստ Լանկլուայ։ Եկեղեցին ունի ցոյցս հնութեան, երկայնաձև կիսաբոլոր բեմիւ, երկուս կողմնական դրունս ունելով արդ, զի աւագ դուռնն խցեալ է. կամարայարկն հին կործանեալ, որպէս ասի՝ բռնութեամբ ձեռին, փայտեղինաւ ծածկեալ է 'ի վերայ վեցից սեանց, որոց խոյակքն հինք են. լուսամուտքն նեղք են յայժ 'ի կողմնական որմունսն և 'ի ձեղուանն, վասն որոյ և մթին. 'ի ներքին որմունսն են քուաքատակք կիտուածեալք. յարտաքինսն՝ ագուցեալ են խաչարձանք և տապանագիրք, և նախայիշեալ արձանն շինութեան պարսպաց քաղաքին. 'ի ներքին որմանն ևս է Խաչարձանն գամբանական Ստեփանոսի ուռումն[1], յամի 1262, գրութեամբ որպէս տեսանի յէջ 271։ — Ի վերայ դրանն ագուցեալ է վէմ արձանի չափական բանիւ յեզերսն, 1316 Թուականաւ, և վահանանշանաւ, (Թիւ 84), զոր ընդօրինակեմ 'ի դիւրութիւն ընթերցման.*

**Որ վասն անչափ սիրոյ քոյին**
**Բանդ ի կուսէ առեր մարմին,**
**Աղաչանաւք Աստուածածնին,**
**Թող ըղյանցանսըն զԱյիծին.**
**Որ եւ հանգեաւ ի մեծ թուին**
**ՉԿ (եօթըն հարիւր վաթսուն) հընգին.**
**Յորժամ դայցես յաշխարհ կրկին**
**Յարո զսա փառաւք քոյին. Ամէն։**

*Հանգոյն Զապելի՝ յաճախեալ էր և Այիծ անուն առ պայազատութեամբ մերայոցս 'ի Սիսուան. ծանօթք մեզ յայն ժամանակս են, Աշիծ՝ քոյր Կոստանդեայ թագաւորի (որդւոյ Պաղտինի), ծնեալ չորիւք ամօք նախ քան*




**84.** *Մահարձան Այիծայ.*

*զթուական արձանիդ, (յ'7 փեպրուարի, 1312), և չէ նմա ճաշ մաղթանք 'Թողութեան մեղաց. և Այիծ՝ Սենէսջալէս Կիպրոսի, դուստր Հեթմոյ տեառն Լամբրոնի, որ և յիշի 'ի կղզւոջ անդ յամի 1312։*

*1 Զև տառից արձանիս ոչ է ըստ նախագաղափարին. երկբայելի է և ընթերցուած բառիցն ԵՊԻԻՍԿՈՊՈՍԵԱՆ, ԺԵՀԻՆԱՆԷ, զոր Լանկլուա ընթերցեալ է, կամ առեալ ընթեռնուլ... Նոյնպէս և սառին տողն, որ յօրագրի ուրեք (Սիսն, Գ, 234) գրի ԵՂԲԱՐ ԻՒՐ ՓՈԽՆԿԱ, իսկ 'ի Լանկլուայն երևի ընթերցեալ՝ ՍԻՐԵԼԻ ՃՇՄԱՐԻՏ ԲԱՐԵԿԱՄ։*

Այլ արձան սեաւ վիմի 0,82 Չ. երկայն, 0,55 լայն, ագուցեալ է 'ի սեղան բեմին, կարեւոր յիշատակաւ 1319 ամի. զոր և փափագէի ուրոյն յանդիման առնել՝ համաձև և համաչափ տառիւք խակականին[1].

Կամաւք անմահ բարերարին
Որ է պատճառ հանուրց գոյին:
Սուրբ եւ հզաւր արքայն Աւշին
Տերամբ թագվոր Հայոց զարմին:
Կանգնեաց զամրոցս այս ահագին
Նոցունց որ աստ ապաստանին:
Ըզհիմնադիր այս ամրոցին
Զթագազարմին Կոստընդին:
Որ նա տիրէ մեծ դղեակին
Որ ԴԵՂԸՆՔԱՐ անուն կոչին.
Աւարտեցաւ ջանաւք սորին
ՉԿԸ[ին]: (եաւթըն հարիւր վաթսուն ութին).
Արդ որ ի սա ապաստանին.
Եւ կամ մարմնոյ աչաւք նային:
Տալ փոխարէն զՏէր ողորմին՝
Լինել ժառանգ Արքին դրախտին: Ամէն:

Նշանաւոր քան զամենայն յարձանագրիդ՝ 'ի ճաշ տեղագրութեան՝ է անուն բերդին Դեղընքար, յորմէ փոխադրեալ է այսր վէմն արձանական, որպէս Հեթմոյն՝ 'ի պարսպաց քաղաքին. և համարելի է ոչ հեռի 'ի Տարսոնէ լինել նմին: Բերդս այս վկայի երբեմն 'ի մեծէ սասանութենէ (1269 ամին) կործանեալ ընդ այլոց բազմաց. այլս կանխէ չինութիւնն քան զայս թուական, և անտի յառաջ չէք այլ Կոստանդին թագազարմն, բայց եթէ ինքն մեծ թագաւորահայրն և Պայլն Հայոց Կոստանդին. բայց արձանդ զՕշին և զԿոստանդին առեալ զմին կանգնող և զմիւս հիմնադիր, և յամի 1319 աւարտեալ, թուեցուցանէ յայնմ ամի՝ (որ է նախընթաց մահուան նորին Օշնի թագաւորի), իւրով հրամանաւ վերականգնեալ զբերդն յայլմէ Կոստանդնէ, թերևս յորդւոյն Հեթմոյ Զամբուլայի տեառն Նղրոյ, զի ժամանակակից էր: Ընդ ամրոցս և աւանն՝ զորս 'ի գերութեան Բ ճոսլընի՝ յամի 1151, կալաւ Նուրէտտին, յիշէ Աբուլֆարաճ և զԲակնաքար, զոր համարիմ նոյն ընդ Դեղընքար բերդիս[2]: — Պատկեր խորանի եկեղեցւոյն (Ս. Աստուածածնի) է նկարէն Տիրամայր Աստուածորդւովն 'ի գրկի, արծաթեղէն թագիւք և շրջանակաւ, նուիրեալ 'ի ժողովրդենէն, որպէս գրեալ է 'ի ստորեւն.

Շինեցաւ արծաթեայ շրջանակս արդեամբ ժողովրդոց Տարսոն քաղաքի. թուին Ո...

Թուի զատ յայամ գրուածոյ՝ միւս ևս զեղերբք շրջանակին փորագրեալ բարձրաքանդակ տառիւք, այսպէս.

Զարծաթապատ սեղանոյ պատկերքս արդեամբք ժողովրդե... ի դուռն Տարսոնի Սուրբ Աստուածածնի եկեղեցւոյն. ի թվին Ո...[3]

Զայս մեծ եկեղեցի՝ Ցովհաննէս Տարտէլ պատմիչ յետին Լեւոնի՝ կոչէ Nôtre Dame de la Coulomgne, (Աստուածածին Սեան), և 'ի նմին թաղեալ ասէ զԿի թագաւոր և զեղբայր նորին Պեմունդ. որք զառաջինն 'ի մատրան միում յԱտանա հանգուցեալ էին, և փոխադրեցան այսր՝ հրամանաւ յաջորդի նորին Կոստանդնի Գ: Շուրջ զեկեղեցեաւն են գերեզմանք Հայոց և այլոց քրիստոնէից: — Զատ 'ի վերոյգրեալ արձանաց և քանդակաց՝ գտանին և այլք ագուցեալք յորմունս մեծի եկեղեցւոյս Հայոց, որպիսի են և վահանանիշքս այսոքիկ.



85. Վահանքանդակք յորմունս եկեղեցւոյն Տարսոնի.

Դ. Եկեղեցին էր Ս. Պօղոս, այժմ փոխեալ 'ի մզկիթ, որ կոչի Գիլիսէ-ձամի. և է քառակուսի օրոգաձև երդեօք, յերիս դասս բաժանեալ կամարակապ սեամբք. 'ի ծայր երկոցուն կողմնական և անձկագոյն դասուց՝ են կիսաբոլոր տեղիք՝ որպէս աւանդատունք, դրամբք զատուցեալք, և խորշք ինչ խցեալք 'ի նոսին. երեք դրունք են 'ի կողմանսն, և մի մեծ յառաջոյ, յորոյ վերայ 'ի ներքուստ յարկ աղօթից (կանանց). յաջմէ դրանն կանգնեալ է Մնիրայն. 'ի վերայ դրանց աւանդատանցն են

[1] Որպէս ճշգրտիւ թղթագանգուած տպաւորութեամբ 'ի վերայ վիմին՝ հանեալ է զհաւաստին Հ. Ստեփաննոս Վ. Նազարեան:

[2] Առաջացի պատմիչք ոչ յիշեն զայս անուն, այլ հանդերձ այլովքն զՄարաշ և զՆեհր-ալ-ճոռ (Ընկուզեաց գետ). անծանօթ է և յետին տեղիս, բայց զի մինչև 'ի սա և 'ի Մարաշ դաշտն գտեղեան, և Ընկուզեկ լեառն ընդ մէջ Մարաշոյ և Զէյթունի կարծի, մարթ էր յայն սահմանս համարել զԴեղընքար, որ է յՆԼ. Հս. գաւառիս:

[3] Այս գրուած է ըստ հրատարակելոյն 'ի Լանկլուայէ:

երկտող գրուածք զիրարեալ դժուարընթեռնլի տառիւք. աջակողմեան դրանն է այս բան.

*Այս դուռն տեառն է արդարոց*
*Եւ բնակարան է երկնայնոց.*
*Պահեա զԱւշին արքայ Հայոց*
*Լեր քաւիչ (իւր) ամեն գործոց։*

Ձախակողմեանն՝ առաւել ևս կնճռեալ խառնութեամբ տառից և սուղ ինչ եղծմամբ՝ անլոյծ մնաց. այն զի և ոչ էր լուսագրեալ առ ստոյգ քննութիւն։ — Գոյ և այլ արձանագիր 'ի սեաւ վիմի առ ձախակողմեան դրամբն, այսպիսի ինչ.

*Հեթում թագաւոր զտաճարս շինեցի որոյ անուն (Ս.) Պաւղոս կոչի... տաճար յիշման Աստուծոյ։*

Ցանուն Ս. առաքելոյն Պօղոսի կոչի և ջրհոր մի, արդ 'ի բակի գունցին Ամերիկացւոց, յոր իջեալ՝ գտին 'ի յատակին փոքրիկ քարայր և վէմ սեաւ ագուցեալ 'ի նմին յունարէն եղծեալ արձանագրաւ, յորում ընթերցաւ անուն Պօղոսի, Παυλου. գտաւ առ երի ընդ գետնաւ քարեղէն աւազան մկրտութեան, նշանակ հին եկեղեցւոյ[1]։ — Ե. եկեղեցի Ս. Ստեփանոս. յիշի յաւետարանի գրելոյ[2] յամի 1215։ — Զ. Ս. Առաքեալք, զորոյ շինողն յառաջին քառորդի ԺԳ դարու՝ յայտնէ յիշատակարան մի, ճառելով զՊաղտին մարաջախտէ. « Տես » զզանազան գործս սորա. զի 'ի մեծ և 'ի նշանաւոր » քաղաքն Տարսոն, յորում էր կայանք բնակութեան » իւրոյ, ետ շինել 'ի սմա տուն և տաճար՝ յանուն սուրբ » և երանելի Առաքելոցն հաստատելով. և էր շինուած » տաճարին ամենայն իրօք գեղեցիկ ձևով դրութեամբ, » բարձրութեամբն, խորանաւն, դրամբքն, և կամարա- » յարմար շինուածովն զարմանալի. այնպէս պայծառ՝ զի » վայելողացն է 'ի մխիթարութիւն, և կամացն Աստու- » ծոյ՝ հեշտութեան։ Որով և 'ի նոյն տաճարս սահմա- » նեաց քահանայս 'ի սպասաւորութիւն, զի անխափան » միշտ յաղօթս լինելով, և զփրկագործ խորհուրդն » Քրիստոսի վասն փրկութեան մատուցանելով. այսպէս » և զանազան բազմերանգ հանդերձ. և պէսպէս մա- » սամբք սեղանոյն և քահանայից պատրաստելով և յօ- » րինելով. նմանապէս և զգիրքս սուրբ աստուածային » կտակարանաց և պատգամաց ժողովելով և հաւաքե- » լով զկենսալուր աւետարանն Քրիստոսի, և զայլսն » համանգամայն առ 'ի պէտս եկեղեցւոյն և յընթեր- » ցումն տօնից տէրունականաց »։ Խիթամ թէ 'ի մզկիթ փոխեալ իցէ և այս չքնաղ եկեղեցի։ — Է. Ս. Յովհաննէս Մկրտիչ։ — Ը. Ս. Սարգիս. այսքեկ յիշին յարծաթագիր յիշատակի՝ որ 'ի կողս աւետարանի հնոյ՝ պահելոյ յեկեղեցւոջ Ս. Աստուածածնի. սա միայն կայ արդ 'ի պաշտաման Հայոց։ — Այս Սուրբ Աստուածածնի եկեղեցիս է՝ յորում հնչէր յիսուսախօս բարբառ երկրորդ տարսոնեան փողոյն՝ Սրբոյ Լամբրոնեցւոյն. յորում և ըստ իւրոց բանից, տեսանէր խուռն դիմել քան զմերայինս՝ զօտարազգիս, « հաւատով երկրպագողս, և զձեռս » լի ընծայիւք և լապտերովք և խնկովք և ձիթօք. որ Ա- » տուծով՝ ասեմ, 'ի նոցին ընծայաբերութենէն՝ զօր » տան և նուիրեն Սրբուհւոյ Աստուածածնին Պատկե- » րին, առնու Տարսոնի եկեղեցւոյն և վանիցս մեր օր » ըստ օրէ պէտքն, 'ի մոմեղինէ և 'ի խնկէ. և ունին այսմ » ընթացակից և հաւատս և ջերմեռանդն գութ առ Ա- » տուած և յեկեղեցւոյ պայծառութիւն »։ Առ դրան այսր եկեղեցւոյ կանգնեաց նա սեղան ողորմած սրտին, և ասէր. « Ի Տարսոնի եկեղեցին՝ սահմանեալ եմք յուր- » բաթի և 'ի չորեքշաբաթի՝ երկերիւր և երեքհարիւր աղ- » քատաց հաց և բակլայ բաշխել. և թէ տայ ևս Ա- » տուած և ձեր (Լեւոնի Ա) բարի կամքն՝ եւս աճեցու- » ցանեմք »։ Բաղդ եղական համարելի է զպահեստ տաճարիս յետ եօթնհարիւր ամաց այսպիսւոյ յիշատակի և այնքան անցից և արկածից, տակաւին 'ի ձեռս համազգեացս. այլ մեծագոյն բաղդ է՝ արժանաւորս այնպիսւոյ պաշտողի ունել պաշտօնեայս։ Ի վերջին ամս գրեաթէ բոլորովիմբ նորոգեցաւ եկեղեցին՝ վայելուչ ճարտարպետութեամբ Թալասցի Աւետեաց։

Մահմէտականաց մզկիթք 'ի Տարսոն՝ են հինգ կամ վեց. մին՝ Գիլիսէ ճամի՝ նախայիշեալ եկեղեցին Ս. Պօղոսի. միւս՝ Ուլու ճամի շինեալ յամի 1385՝ 'ի Ռամազանեանն Իպրահիմ բէկէ, հոյակապ և վայելչազարդ, թէ և ոչ քաջ բարեձև, չորիւք աշտարակօք կամ մինարայիւք յանկիւնս. որոյ վանատուն կամ բակ իւր է կամարակապ որձաքար սեամբք պղնձեայ ոսկէզօծ խոյակօք և խարիսխօք. ներքին տաճարին են քառակուսի սիւնք՝ բարձրաքարկին. ընդ մէջ երկոցուն՝ կայ գաւիթ քուայատակ. մինրայն մեծ՝ անջատ ամբառնայ յաջմէ կողմանէ։ Ի միում յայլոց մզկիթաց համարի զոլ գերեզման Դանիելի մարգարէի, վասն որոյ կոչի Մէհքէմ հազրէթի Տանիէլ։ Են մահմէտականաց և այլ այսպիսի սրբազան գերեզմանք և ուխտատեղիք. որպէս մին 'ի գերեզմանատան Պէօյիւք-սինի անուանեալ, ուր և քրիստոնեայք երթան յուխտ, համարելով Ս. Պետրոսի ուրումն եպիսկոպոսի հանգստարան. և ուխտատեղին կամ թէքքէ՝ Հասանայ, կացելոյ յեւս ԺԲ դարու ըստ աւանդութեան նոցա. որոյ արձան յիշատակի քուֆագիր 'ի սպիտակ կճի՝ պահէր 'ի տան գունցին Անգղիոյ։ — Չիք այլ ինչ շինուած նշանաւոր 'ի Տարսոն, 'ի շուկայս, 'ի կարաւանատունս կամ 'ի բաղանիս. 'ի յետինսն՝ մին կարի հին երևի, վասն որոյ և Էսկի համամ կոչի։ — Ոչ ճանաչին տեղիք բնակութեան և եկեղեցիք Լատինաց՝ հաստատեալք 'ի նուաճման քաղաքին յառաջին խաչակրաց, և շնորհեալք 'ի Լեւոնէ, որ յամս 1201 և 1215 պարգևեաց Գենուացւոց բովանդակ փողոց մի 'ի Տարսոն, շինել եկեղեցի և փուռն

1 Տեվիս, Davis, 141։

2 Տեղի գրչութեան աւետարանին է Սողբոյ վանք՝ ըստ ընդօրինակողին, այլ կարծեմ թէ իցէ Սողբոյ վանքն՝ տեղի ուսման Ս. Ներսիսի Լամբրոնեցւոյ, որ յիշեցաւ յէջ 113։

և բաղանիս և պարտէզս[1]. յորմէ յայտ է թէ վաճառականք Նոցա յաճախէին յայնժամ և 'ի Տարսոն. պահի 'ի դիւանս Նոցին ('ի Գենուա) զատ յայլոց բազմաց՝ մուրհակ մի վաւերացեալ յամի 1279 'ի 14 Նոյեմբերի յԱյաս, յորում Վասիլ ոմն խոստովանի ընկալեալ 'ի Մանուելէ Լերգարեայ Գենուացւոյ՝ դիպակս 300 սառակին բիւզանդաց արժէիւք, առ 'ի վաճառել 'ի Տարսոն։

Չիք երկբայել զի հանգոյն դոցին յաճախէին այսր և այլ տոհմք իտալականք, Վենետկեցիք, Պիզացիք, և այլն. որոց գլխաւոր կացուրդ էր յԱյաս. այլ զի սա յառաջ քան զայլ քաղաքս խսպառ կապտեցաւ և աւերեցաւ յԵգիպտացւոց, 'ի դէպ է թէ ուղևորք արևմտեայք 'ի Կիլիկիա՝ յաւէտ 'ի Տարսոն գային։ Ի Նոր դարս՝ մի յառաջնոց եկաց է Պերդրանտոն փռանկ, յամի 1432, որ բարեբեր եգիտ զսահմանս քաղաքին, և բազում հին շինուածս տակաւին կանգունս 'ի նմին. չէն և զբերդն՝ կրկին և ուրեք երեքկին պարսպօք և փոսով։ Զնոյն յիշէ և Պարպարոյ վենետկեցի յամի 1471-2, յորում ժամանակի եղբայր Շահսուարի իշխէր 'ի Տարսոն[2]. երկուստեք բերդն անմատոյց գործեալ էր հնգետասան գրկաչափ բարձրութեամբ, տաշածոյ վիմօք. յառաջոյ կողմանէն կայր քառակուսի հարթ գետին սանդղօք ելանելի, բաւական 'ի կայան հազար ոգւոյ. յիշէ և զկամարակապ քարեղէն կամուրջն։ — Պօղ-Ղուկաս որ յամի 1704 ուղևորէր 'ի կողմանս աստ, յարևելից կուսէ անցեալ ընդ քարաշէն կամուրջ գետոյն (զոր Merikafa? կոչէ), և ընդ դուռն մեծ (30' բարձր և 20 մատնաչափ թանձր երկաթապատ) մտեալ յաւերակս հին քաղաքին Տարսոնի, զորոյ շրջապատ համարի իբր չորս փարսախս. եկեղեցին Յունաց իբրև հիւղ մի էր, Հայոցն բարեշէն, 'ի Պօղոսէ առաքելոյ հիմնարկեալ՝ ըստ աւանդութեան. և համարի 'ի սասանութենէ երկրի կործանեալ զքաղաքն։ — Քինեայր անգղիացի յամի 1813 յայց ելեալ՝ նման իմն վերնոյն՝ քառորդ լոկ հնոյն Տարսոնի համարեցաւ զայժմեան, և զմասն մի եկեղեցւոյն Հայոց՝ կարի հին։ Թիւ բնակչաց քաղաքին՝ ըստ սմա՝ 'ի ձմերանի առաւելու ց'30,000, յորս 200 տունք Հայոց, և 100 Յունաց. բայց յաւուրս նուաճման Կիլիկիոյ յԻպրահիմայ որդւոյ կուսակալին Եգիպտոսի, յամս 1832-9, միայն 4000 բնակիչք համարէին քաղաքին, զատ 'ի զօրականէն։ Չիհաչէֆ յամի 1853 գրէր 1700 տունս 'ի Տարսոն, յորս 200 Արաբաց, 80 Յունաց, 50 Հայոց։ — Աւելորդ համարիմ յիշել և զտեսութիւնս ուղևորաց 'ի յետին քառասուն ամս, յորս մարթ է գլխաւոր և մանրապատում գրել զԼանկլուայն, այլ ոչ քաջ ստուգապատում։ — Ըստ յետին տեսութեանց՝ յաւէտ նուազեալ համարի Տարսոն 'ի վաճառական բարգաւաճանս, որով և յայլում ամենայնի. զի Մերսին որ նաւահանգիստ Նորին համարի՝ առանձինն իմն ձևանայ շահաստան. իսկ ըստ քաղաքական տեսչութեան՝ Ատանա գրաւէ զամենայն առաւելութիւն. թէպէտ և իցեն տակաւին երթևեկք վաճառուց, որպէս և մեծամեծ վաճառանոցք, իջևանք, կրպակք, և այլն։ Միայն անզեղջն բնութիւն, թէ և անհամբոյր 'ի բնակութիւն ամարանի, առատապէս հատուցանէ զբերս երկրի, մանաւանդ զցորենոյ և զբամբակի, զառաջնոյն հասարակօրէն 10-20 ընդ միոյ, և 'ի խոնաւ եղանակս ձմերանի՝ 30 ընդ միոյ։

106. Զշրջակայ վայրաց Տարսոնի ոչ գտի ծանօթութիւն ստոյգ, և զոր 'ի քարտս ինչ տեսի՝ նշանակեցից. բայց և ոչ 'ի Նախնեաց ունիմ աւանդեալ անուանս տեղեաց. միայն ճանապարհագիրն Երուսաղեմի 'ի Դ դարու նշանակէ ընդ մէջ Տարսոնի և Ատանայ, որ է 'ի հիւսիսոյ արևելից առաջնոյն, զՊարգաս կամ Պարգէս (Pargas, Pargais), 13 մղոն (հռոմէական) հեռի 'ի նմանէ, և 14 'ի միւսոյն. նոյն և 'ի հիւսիսակողմն՝ առաջին իջևան 'ի Տարսոնէ ընդ նեղուցն Կիլիկիոյ՝ 12 մղոնաւ հեռի՝ զվաղ յիշեալն (յէջ 124-5) Մոպսուկրենէ կամ Մամսուկրինէ, առ որով ցուցաք և զՊօսթանլը կամ Պօսթանճըգ և Մէզար-օլուգ գեօղս։ Ընդ մէջ սորա և քաղաքին՝ յայսմ կողման հիւսիսոյ՝ նշանակին Գօձա-Քօրէճ, որ յիշեցուցանէ զանուն Էրոյի, Eroï, աւանի Տարսոնի, յիշեցելոյ 'ի ժամանակս Խաչակրաց, զորոյ կէս տասանորդի հասիցն և զշրջակայ վայրացն՝ ընդունէր Սիոնի վանքն Լատինաց յԵրուսաղէմ, որոյ էր և նաւ մի 'ի վերայ գետոյն (Կիւդնոսի)[3]։ — Գուլնիմուսի ? քէօյ, Պէդիլի ?, Պայրամլու, Տամլը քէօյ[4]։ Դարձեալ 'ի հիւսիսային արևելեան կողման 'ի վերայ ճանապարհին Ատանայի, սակաւուք հեռի 'ի Տարսոնէ՝ յիշի Եարալըշ գեօղ, որում հուպ՝ մեծ և կամարապատ հին ջրհոր մի՝ Մէրտիպաղի կոչեցեալ։ — Քէօփիւ քէօյ, որոյ հանդէպ թիլ մի կամ հողաբլուր, որպիսիք բազում և այլք են 'ի դաշտին հաւասարաչափ իմն հեռաւորութեամբ յիրերաց, վասն որոյ և կարծեցան դիտանոցք եղեալ 'ի հնումն։ Յարևմտակողմն քաղաքին՝ Մէսլամէդիլի ? (Մէլամէթլի ?), Փիլձա ?, Թօբպալը։ Ի հարաւակողմն Տարսոնի՝ որ վարուն է՝ 'ի ծով գնալով, հարկ է թէ յոլովք իցեն շինավայրք. յորս մերձագոյն 'ի քաղաքն՝ Կեավուր քէօյ յունաբնակ, հանդերձ եկեղեցեաւ. — Մաճրաշ, ժամաւ հեռի 'ի քաղաքէն, ուր յայտնեցան մնացորդք ինչ աղիւսեայք և քարեղէնք հռոմէական շինուածոց, յորս և բաղանիք մի[5]։ — Փէրքէճ, Ալիմէլի, Տէլիմէճի ?, Քէլիմէճի քէօյ։ Բացագոյն յարևմուտս հարաւոյ՝ Եայլա քէօյ, Քէօմիւրլիւ կամ Խամուրլու, կամ այլազգ, զի պէսպէս գրի, (Homourlou, Chumurlu, Chamarlije), թուրքաբնակ. այլ խաչքանդակք 'ի վերայ մզկթի նոցին՝ յայտ առնեն զնախնի բնակութիւն քրիստոնէից[6]։ — Գարաճա-եայլաք, Գարաձիլաս, Եշումուգ գալէ, ըստ այլոց Հուտուրուքս ? գալեսի, և այլն։ — Յետինն թուի բերդն յիշեալ 'ի Պոփորդէ (յամի

1 Dono ... vicum unum in civitate Tarsensi, habendum et possidendum juro perpetuo et libere et quiete, et unam *ecclesiam* et terram ad faciendum et hedificandum in ea balneum et furnum et at plantandum in ea jardinum. — *Cartul.* 127.

2 In esso è un castello scarpato da due lati, di una scarpa alta passi 15, la quale è di pietre tutte lavorate a scarpello; davanti è un luogo piano, quadro et eminente, al qual si va per il castello con una scala, et è tanto lungo e largo, che terrebbe suso 1000 huomini. La terra è posta su un monticello non molto alto. — Jos. Barbaro, presso Ramusio, II, 100.

3 *Rey*, Colonies, 283.

4 Այսոքիկ ըստ Չիհաչէֆի և Ռուսաց աշխարհացուցի։

5 Տէվլիս, 49։ Յիշեցաւ միւս Մանթէշ յէջ 212։

6 Petermann, I, 348.

ռոգանել և պտղաբեր առնել զամայի դաշտավայրն, այլ ոչ տուաւ նմա թոյլ։ Ի տապս ամարանի խոյս տան բարեկեցիկքն 'ի բնակչաց՝ 'ի լեռնակողմանս, ուր են ամարանոց գեօղք Կեօզնէ (Guezna) և Իսմէ, հինգ կամ վեց ժամուք 'ի հիւսիսոյ աւանին։ Առ Իսմէիւ են ծծմբային ջերմուկք, և հետք հին բաղանեաց։

Զուարճալի են յոյժ և սահմանք Մերսինայ, գեղեցիկ և զանազան բուսաբերութեամբ և պտղաբեր պարտիզօք, մանաւանդ ընտիր ծիրանի, տանձի և գեղձի ծառոց, յորս ապաստանին եկք և բնակք 'ի տապս ամարանի. 'ի բուսականս՝ նշանաւոր է մրտենին՝ յորմէ առեալ է տեղւոյն զանունն (Μυρσίνη) Մերսինէի, ըստ Յունաց։ — Ի բազում տեսակաց բուսոց վայրեաց և ընտանեաց՝ զոր Քոչի և այլք հետաքննինք՝ քաղեցին կամ նշանակեցին շուրջ զՄերսինաւ, նշանակեսցին յոլովք 'ի ստորեւ, որպէս որք 'ի սահմանս Պրիտ լերին և այլուր [1]։ Ի դաշտին և 'ի պուրակս առատապէս երևին որսական հաւք և չորքոտանիք, գեղեցիկ աքլորն վայրի (Tetrao-gallo), սալամբ, արագիլ սպիտակ (Ciconia alba), կինճք, եղջերուք խայտք, Նապաստակք մանունք (Lepus Syriacus)։ Ի մօրս և 'ի ճախճախուտս կրիայք մանունք և մաւրիտեանք (Testudo Mauritanica). իսկ ուր արտօրայք են մշակութեան՝ յաճախ երևին լուծք չհամազգիք, որպէս ուղտ և էշ, կամ ուղտ և գոմէշ արօրադիրք։

Երիւք մղոնօք կամ դոյզն աւելի բացակայ յարևելից կուսէ Մերսինայ՝ երևի 'ի դաշտին վէմ մի մեծ եօթն Զափ բարձրութեամբ բուսեալ յերկրէ, Տիրէկլի-դաշ (կոթողաքար) կոչեցեալ 'ի Թուրքաց, նման Մէճ-ճիր

1 Dianthus axilliflorus, Շահօղրամ-մեխակ.
Ranunculus trachycarpus, Խառաձաղիկ պնդապտուղ.
Nigellaria stellaris, * Սևիճուկ աստղաձև.
Dolfinium axilliflorum, * Դլֆինի ընկեռածաղիկ.
Papaver stylatum, Մեկոն նրբասեչ.
Peltaria angustifolia, * Ասպարուկ նեղատերևի.
Thlaspi elegans, * Տափկի պերճ.
Erucaria Aleppina polysperma, Ճարճրուկ բերիայի բազմասերմն.
Helianthemum lavandulæ folium, Արևծաղիկ հուսամանատերև.
Fumana Spachij, Ֆումանա Սպակեան.
Silene Kotschij, Ճլէլէկ Քոչեայ.
Cerastium fragillimum, Կորնգան դիւրաբեկ.
Hypericum polyphyllum, Գոճամօրու բազմաթերթ.
Erodium gruinum, * Ճայեկասուց կռընկուկ.
Ochtodium ægyptianum, * Խաղաւարտի եգիպտական.
Paronychia argentea, * Քցըմի արծաթորակ.
Ononis adenotrica, Իշախոտն գնդակաւոր.
— brevifolia, Իշ. կարճատերև.
— reclinata, Իշ. տարածուն.
— hirta, Իշ. խոզանուտ.
— mitissima, Իշ. կակղիկ.
Trigonella fœnumgræcum, Հացհամեմ հասարակ.
— raphanina, Հաց. բողկակերպ.
— halophila, Հաց. ծովային?
— monantha, Հաց. միածաղիկ.
— Sibthorpij, Հաց. Սիբթորբեան.
— cylindracea, Հաց. գլանաձև.
— plicata, Հաց. ծալածոյ.
Medicago galitea, Առպատ ..........
Trifolium ochroleucum, Առուոյտ դեղնասպիտակ.
— arvense longisetum, Առ. դաշտաց երկայնաթել.
— xerocephalus, Առ. ցամաքագլուխ.
— Petrisavij, Առ. Պետրիսաւեան?
Lotus peregrinus, Հանգաղուղ օտարասեռ.
Tetragonolobus palæstinus, * Քառապճեղն պաղեստինեցի.
— conjugatus, Ք. զուգած.
Coronilla montana, * Պսակուկ լեռնային.
Hippocrepis ciliata, * Ձիապայտ գիսաւոր.
Colutea cilicica, * Կորկի կիլիկեան.
Glycyrrhiszopsis flavescens, Մարուխ խարտեաշ.
Astragalus tuberculosus, Խագիրան ուռուցկոտ.
— schizopterus, Խ. ըլաքատաղարթ.
Onobrychis gracilis, Իշառուոյտ վտիտ.
Potentilla calycina, * Հզօրի բաժակաձև.
Achemilla arvensis, Ձթարլիթ դաշտաց.
Umbilicus glubulariæfolius, * Պորտի գնտածաղկի-տերև.
Eryngium glomeratum, Երնջանակ կուտակեալ.
Bupleurum glumaceum, * Եզնակող մաշկաւոր.
Scandix turgida, Ճանդի? ուռուցեալ.
Colladonia cilicica, * Մածանի կիլիկեան.
Tordylium Syriacum, Շակակուլ ասորի.
Aisnworthia trachycarpa, Էնզուորթիա կարծրապտուղ.
Daucus Broteri, Ստեպղին վայրի Պրոտերեան.
Caucalis tenella, Աշտարեղ-վայրի մատաղ.
Cornus australis, Ջողալի հարաւային.
Galium adhærens, Կարածի-խոտ կպչուն.
— Parisiense brachypodiam, Կա. բարիզեցի կարճոտն.
— Cassium, Կա. Կասիոսեան (լերին).
Cephalaria cilicica, * Գնդագլուխ կիլիկեցի.
Scabiosa palæstina microcephala, Քոսքսուկ պաղեստինեցի.
Filiago gallica, * Թեւլկի գալլիական.
— spicata, Թ. հասկաւոր.
Anthemis arenicola, Անթեմ աւազաբոյս.
Centaurea carneola, Տերեփուկ Կառնիոլայ?
— cilicica, Տ. կիլիկեցի.
Catananche lutæa, * Սիրենի դեղնորակ.
Scorzonera verrucosa, * Սեւկեղևի կոծծաւոր.
— lacera, Սե. հերձոտ.
Crepis Reuteriana, * Մուճակ Ռեւտերեան.
— parviflora, Մ. փոքրածաղիկ.
Campanula retrorsa, Կանթեղնիճ ընկրկեալ.
Specularia speculum libanensis, * Հայելի լիբանանեան.
Periploca gracilis, * Շրջի վտիտ.
Ectium glomeratum, * Իժուկ հոծեալ.
Lithespermum hispidulum, * Կաքաւկրկուտ թաւարծի.
Verbascum lyratifolium, Եզնագի քնարաձև?
Linaria lanigera, * Վշենիկ ասրաբեր.
— præalta, Վշ. բարձրաբերձ.
Scrophularia xanthoglossa, * Խողելընդի շիկալեզու.
Veronica divaricata, Վերոնիկ տարածուն.
Siphonostegia syriaca, * Խողովակենի ասորի.
Philipæa lavandulacea, Փիլիպէա հուսամանեան.
Salvia napifolia, Եղեսպակ շաղգամատերև.
Rosmarinus officialis, Լիբանոտեան դեղագործաց.
Sideritis perfoliata, * Երկաթբուժակ հակատերև.
— cretica, Եր. կրետացի.
Teucrium rosmanifolia, Ջարօշ լիբանոտեան տերևով.
— Kotschij, Ջ. Քոչեայ.
Euphorbia Cybirensis, Աբարբիոն Կիւբիրեան?
— aulacosperma, Աբ. խորշխորշեայ?
Quercus Ehrenbergij, Կաղնի Էհրէնպէրկեան.
Alnus orientalis, Թեղի կամ Բարտի արևելեան.
Arum Dioscoridis spectabile, Գեղադէշ Նուրճ Դիոսկորեան.
Helicophyllum Rauwolfij, * Կորատերև Ռաւոլֆեայ.
Typha stenophylla, Ճիլ պնդատերև.
Cephalanthera ensifolia, * Գլխածաղիկ թրատերև.
Crocus cancellatus, Քրքում ճամուկ.
Colchicum Steveni, Ձիւնծաղիկ Ստեւենեան.
Allium Gayi, Խստոր Գայեայ.
Bellevalia hispida, Պելլեւալիա թաւարծի.
Cyperus Monti, Կիպերոս Մոնտեայ.
Panicum cruciforme, Ձիակորեակ ասրեկաձև.
Phleum exaratum, Ճիլ............
Corynephorus articulatus, * Լախտենի յօդակապ.
Avena pilosa, Վարսակ խոզանուտ.
— clauda, Վ. կորաթեք.
Bromus brachystachys, * Խրոցակ կարճասատեղն.
Lolium rigidum rottbollioides, Որոմն բիրտ։

անուանելոց վիմաց՝ 'ի գաւառս Անգղիոյ և Կելտաց[1]: — Մերձագոյն ևս 'ի դաշտի անդ են երբեակ Թիլք կամ ձեռագործ հողաբլրակք, որպէս Թուլ դիտանոցք 'ի հնումն. 'ի գագաթան միոյն միայ նշխար ամրոցի, զորոյ քարինս քակեալ վարեալ են 'ի շինուածս աւանին:

Ստրաբոն հին աշխարհագիր՝ 'ի տեղագրելն զծովեզերեայքս՝ յետ յիշելոյ զԱնքիալեւս և յառաջ քան զգետամուտս Կիւդնոսի 'ի ծով, 'ի վերոյ Անքիալեայ՝ իմա 'ի հիւսիսակողմն՝ ասէ լինել բերդ մի հին և ամուր, Կուինդա, Κύινδα կոչեցեալ, ուր Մակեդոնացւոց յապահովեալ էր զգանձս իւրեանց, յորոց կորզեաց Եւմենէս յաղթահարեալ զԱնտիգոնոս. ոմանք յայժմու հնաքններն աշխարհագրաց՝ տարապայման անդրաձգելով համարեցան զտեղիդ լինել զբլուրն որ 'ի Թիկանց Անազարբայ. մարթ էր լինել և անդ համանուն տեղւոյ, այլ ոչ ստրաբոնեան բերդին, որոյ թերևս մերձագոյն է դրիւք և անուամբն Սինանդէ՝ յիշեալ 'ի սահմանս Ատալեայ (յէջ 176):

[1] Լանկլուա կրկնապատիկ առաւել համարէր զբարձրութիւն կոթողաձև վիմին, իսկ զլանգուածն՝ իբրև 120 Չափ խորանարդ:



87. Ցիրէկլի-դաշ, վէմ կոթողաձեւ, մերձ 'ի Մերսին.

# Գ.

# ՔԱՐԱՅԻՆ ԿԻԼԻԿԻԱ



ին աշխարհագիրք Յունաց և Լատինաց, որպէս ծանուցաք յառաջագոյն (յէջ 2 և 62), Քարային և կամ Ապառաժ անուանէին զհամօրէն զարևմտեան մասն Կիլիկիոյ, 'ի սահմանաց Տարսոնի մինչև 'ի սահմանս Պամփիւլիոյ, և յատկապէս զգետահովիտն Կալիւկադնոսի (Կէօք-սու) կամ զգետոյն Սելեւկիոյ, որ ըստ այժմեան օսմանեան տեսչութեան կոչի Իչ-Էլի նահանգ. բայց զի մեր չէ փոյթ հին կամ նոր բաժանմանց երկրի՝ ըստ օտարաց, (որք և անմիաբանք են յայսմ մասին), այլ ըստ երբեմն մերազգեացս տիրապետութեան, հարկաւորիմք յայս բաժին երկրի ամփոփել և զմասն կամ զբոլորն Իսաւրիոյ՝ փոքու աշխարհի, զոր և բնութիւն իսկ գետնոյն և մերձաւորութիւնն՝ ոչ միայն դրացի՝ այլ գրեաթէ անանջատ կացուցանէ 'ի Քարուտն Կիլիկիոյ. ընդ նմին և զմասն ինչ Լիկայոնիոյ՝ զնուաճեալն երբեմն 'ի Լևոնէ, այս ինքն՝ զԼարանտա կամ Գարաման, որոյ սահմանք նոյնպէս խառն են ընդ Իսաւրիոյ. էր իսկ երբեմն առ Բիւզանդեամբք զի բովանդակ իսկ միջոցս այս երկրի՝ մասնաւորեալ յերից աշխարհաց՝ Թեմ Իսաւրիոյ կոչէր, որպէս և կանխաւ յիշեցաք (յէջ 41)։

Սակաւածանօթ են կողմանքս 'ի պատմութեան մերում, կամ զի և ոչ երկար ինչ ժամանակս կացին ընդ ձեռամբ մերայոցս, բաց 'ի մասանց ինչ, և կամ զի ոչ բանաբարեցան ստէպ՝ որպէս արևելեայ կողմանքն յԵգիպտացւոց և 'ի տիրողացն Ասորւոց երկրի, վասն այնորիկ և անյիշատակ մնացին, որպէս և 'ի յետին ժամանակս՝ անայցելուք յուղևորաց [1], զի և ոչ հասարակաց պողոտայի հետք են ընդ այն. ոչ գիտեմ թէ և գտցին և որչափ ինչ՝ ազգային յիշատականացք 'ի նոյնս։ Արդ այսոքիկ որպէս զիարդ և հաճոյ իցեն այլոց, մեք զբովանդակ զերկիրն՝ որ յարևելից 'ի Տարսոնէ կամ 'ի Մերսինէ ձգի յարևմուտս մինչև 'ի կողմանս վիճակին Ատալիոյ, և 'ի հիւսիսոյ՝ յարևմտեան պարուց գահուն Կիլիկիոյ ('ի Պուլղար և 'ի Տիւմպէլէկ լերանց) և 'ի Գարամանայ՝ ընդ հարաւ 'ի ծովեզերս Միջերկրականին, համարիմք պատշաճել Քարայնոյն Կիլիկիոյ, և բաժանեմք յերկուս մասունս կամ գաւառս. անուանելով, Ա. Գետահովիտ Կալիւկադնոսի կամ Սելեւկիա. Բ. Լարանտա, որ այժմս կոչի Գարաման. յայս յետին անուն երբեմն ճանաչիւր և մեծ մասն Կիլիկիոյ 'ի տիրապետութեան սերնդոց Գարամանն Թուրքի. նոյնպէս անուանեցաւ և յետոյ յաշխարհակալութեան Օսմանեանց։ Միայն զծովեզերս Գարամանիոյ թողումք 'ի տեղագրութիւն Ծովային մասին Կիլիկիոյ։

[1] Ի հարևանցի տեսութեան իսկ կողմանցս՝ նշանակեցան 'ի գիտնոց՝ յազգս բուսականաց, Ճլէլէկք՝ Մազոտն և յատուկ Գարամանեան (Silene Capillipes, Sil. Caramanica), ' Գաճի կորատերև և Առոստեան? (Gypsophila Curviflora, Gyp. Arrostij), ' Արագլակտուց Էնտելիկէրեան (Pelargonium Endelicherianum), Շահոդրամ ենթականաչ (Dianthus hypochlorus), Մաղթեղջիւր կնգղաւոր (Cornucopiæ cucullatum), ' Փորենի պաղպաջուն (Gastridium nitens), Աւազուկք Լեդեպուրեան և մածոզ (Arenaria Ledeburiana, Ar. glutinosa). պատկեր յետնոյս ըստ ձևագրութեանն 'ի Չիհաչէֆէ, որպէս սեփական Քարայնոյն Կիլիկիոյ՝ տեսցի յէջ 281։

# Ա· ՀՈՎԻՏ ԿԱԼԻԿԱԴՆՈՍԻ

109. Բովանդակ արեւմտեան բաժին աշխարհին Կիլիկիոյ եւ անուանեալն բուն Քարայինն՝ է հովիտ Կալիկադնոս գետոյ, որ երրորդ է մեծութեամբ 'ի ջուրս Կիլիկիոյ, եւ ոչ որպէս զայլսն 'ի հիւսիսոյ 'ի հարաւ իջանէ 'ի ծով, այլ յարեւմտից ընդ արեւելս խաղայ, յերկուս իմն ընդմիջելով զգեղեցիկն այն եւ զընդարձակ երկայնաբոլոր հովիտ, զպարսպեալն երկուստեք 'ի լերանց ապառաժից, թէ եւ ոչ միահետ եւ անընդհատ կցելոց. յորոց հարաւայինն՝ սակաւ փարախօք հեռի կայ 'ի ծովեզերէն, վտակս մանունս առանձնակս առաքելով 'ի նոյն. իսկ հիւսիսային շարքն անջրպետեն զերկիրն 'ի Լիկայոնիոյ (Ղօնիա) եւ յԻսաւրիոյ. սահմանորդս ունելով յարեւմտից զՊիսիդիա եւ զՊամփիւլիա, յարեւելից՝ զերեսին եւս մեծամեծ բաժինս Կիլիկիոյ, զԼեռնային, զԴաշտային, եւ զմասն Ծովայնոյն: — Այլեւայլ առաջք եւ օժանդակք են գետոյն Կալիկադնոսի, որոց գլխաւոր համարի ատոբինն եւ արեւելագոյնն՝ Կէօք-սու (Կապոյտ գետ), յոր անուն կոչի յոմանց եւ բովանդակ իսկ գետն, եւ բղխէ 'ի համանուն Կէօք-տաղ լեռնէ. ըստ տեղացւոց քարտից ոմանց՝ յարեւմտից Էրմէնէկի ընդունի զգետակն Ագդարի՝ թերեւս Աք-տէրէ՝ իջեալ 'ի սահմանաց Իսաւրիոյ, զոր եւ մարթ է սկիզբն համարել Կալիկադնոսի, եւ արդ 'ի բազմաց յանուն քաղաքիս կոչի՝ Էրմէնէկ-սու. յարեւելից վիճակի սորին իջանէ Պալքեսէն (ըստ ոմանց Պաչըրգան). եւ 'ի սորին արեւելից եւ յարեւմտից Գարամանի՝ Պուզաչը-սու, որ անցանէ առ Մուդաւ. այսոքիկ ամենայն յահեկէն՝ որ է 'ի հիւսիսոյ կողմանէ Կալիկադնոսի. իսկ յաջմէն վտակք փոքունք, յորս հզօրք արեւմտագոյնքն Պաչ-տէրէ եւ Էրիկ-տէրէ: Յետ օժանդակութեան սոցին անձկանայ եւ խորանայ գետահովիտն, վասն որոյ եւ մանունք են գետակքն, յորս մարթ է առաջին համարել ըզՍարը-գավագ 'ի ձախմէն՝ յելից Մուդայ: Երկայնութիւն գետոյն համարի ընդ բնաւ 160-170 բնամղոն: Բազմաթիւ յոյժ են մանր վտակք օժանդակացն, եւ գրեաթէ ամենեքին 'ի բարձանց լերանց եւ բլրոց գահավիժին, վասն այսորիկ եւ ստիպեն իմն յերագութիւն զհոսանս գետոյն:

Թէպէտ եւ բովանդակ երկիրն լեռնային է եւ մարթ իցէ Տաւրոսի կցորդ համարել զլերինսն, այլ ոչ ուղղակի պարակցին նոցա՝ որպէս զահքն Կիլիկիոյ, եւ ոչ համարին ունել կատարս բարձունս քան զ'2000 Զ.: Նշանակին յահեկէ գետոյն լերինք՝ սկսեալ 'ի Հս. արեւմտից՝ Աչչիճ տաղ, Եէյլի-պէլ տաղ, Քարրամ տաղ, Թօփչէ տաղ կամ Թօփ-կէտիք՝ ընդ մէջ Պալքէսէնի եւ Պուզաչըեայ, Ալի-պէկ տաղ յելից Պուզաչըեայ, Թէքբէէ ընդ մէջ Սարըգավագայ եւ Սելեւկիոյ: Յաջմէ գետոյն ընդ մէջ Կէօքսուի եւ ծովեզերին՝ նշանակի երկայնաձիգ Թիւրքենկիր լեռան, 'ի հնումն կոչեցեալ Իմպարոս: Ի հարաւակողման Սելեւկիոյ յանջրպետս գետահովտին եւ ծովեզերացն՝ խնդրելի են Կարմերդես կամ Կաթիմերդես (Carmerdes, Cathimerdes) լերինք, ընդ որս էանց Փիլիպպոս Օգոստոս թագաւոր Փռանկաց, յամի 1191, յետ անցանելոյ ընդ Կալիկադնոս: — Ստորին արեւելեան հովիտ գետոյն՝ միայն 'ի սահմանս Սելեւկիոյ դաշտանայ եւ ընդարձակի, որպէս եւ գետն. զի 'ի միջին մասին իւրում հազիւ 15-30 Զ. լայնութեան ունի, եւ ծանծաղ է, այլ երագընթաց ըստ կէզնելոյ գետնոյն, իբր 2 կամ 3 Զափ առ մէն բնամղոն. այլ 'ի վերնակողմն քառապատիկ եւս երագասահ է, ըստ առաւելութեան զառ 'ի վայրին: Այսպիսի զօլով երկրիս՝ բարձամբք եւ փորովք անդնդաձեւ յօրայսեալ, անհնար էր դիւր եւ արահետ հուն հորդել ընդ այն, եւ չիք իսկ այնպիսի ճանապարհ բերող 'ի Սելեւկիա իսկ՝ 'ի գլխաւոր չէն գաւառին. բայց երկու պողոտայք բացեալ են վարունք 'ի ծովեզերին՝ 'ի Կելենտերեայ 'ի վեր ընդ հիւսիս՝ կտրելով զգետն եւ զվտակսն, եւ անցանելով ընդ կիրճս եւ ընդ ձորահովիտս. մին ընդ արեւելս կամ յաջմէ՝ տանի 'ի Լարանտա, եւ միւսն յահեկէ՝ յԷրմէնէկ եւ անտի յԻկոնիոն: — Զիք երկրայել թէ ուր եւ հարթ իցէ երկիրն՝ քաջ բարեբեր է եւ զուարճալի բուսաբերութեամբ եւ պտղաբերութեամբ, այգեօք եւ անդաստանօք. որոց վասն երեւին 'ի նախնեաց բացեալ առուք ջրբերք, քանզի բարձր են ափունք գետոյն եւ ոչ պատեհք յոռոգումն անդոց:

Ըստ քաղաքականին, որպէս եւ այլուր ծանուցաք, դժուարորոշելիք են սահմանք Քարայնոյն Կիլիկիոյ եւ Իսաւրիոյ, մանաւանդ թէ ըստ բազմաց անբաժանք. իսկ առանձինն գաւառք ըստ հին աշխարհագրաց, 'ի մասինն՝ յոր սահմանեցաք մեք զՔարուտս Կիլիկիա, յարեւմտակողմն նշանակին, Լալասիս կամ Դալասիս. զի երկակի եւս գրեալ կայ (Λαλασίς, Δαλασίς), սակայն Իսաւրիոյ սեփականեն զայս՝ հանդերձ համանուն քաղաքաւ. — յարեւելակողմն՝ Սելեւկիա. իսկ 'ի միջակողմն ոչ նշանակի ուրոյն գաւառ, ոչ այնքան սակս համաձեւ անհարթութեան երկրին, որքան վասն անհարթութեան բարուց աւազակող բնակչացն, որոց դժուարին էր սահմանս եւ բաժինս կարգել: Հռովմայեցիք անգամ թողին զայն 'ի բնիկս երկրին, յորս էր ցեղ մի որբազան կամ քահա-

նայական՚Համարեալ, յՕլբա վիճակի (Olba կամ Olbasa), զոր ՚ասէին՚ի զարմէ Էասայ որդւոյ Տեւկրեայ, միոյ ՚ի Հոմերական դիւցազանց։ Միւս ևս տոհմ էր կեննատեանց (Cennati), մայրաքաղաք ունելով զԴիոկեսարիա։ Առ Բիւզանդացւովք՝ Թեմ Սելեւկիոյ անուանէր ոչ միայն բովանդակ գետաՀովիտն Կալիւկադնոսի, այլ և



88. Աւազուտ մառոզող (Arenaria glutinosa).

անդրագոյն մասն Իսաւրիոյ. և ըստ Պորփիւռոժենի՝ ներքսագոյն մասնն և ծովեզերեայն կոչէր Դեկապոլիս, այսինքն է Տասն-քաղաքք, որք են Գերմանիկուպոլիս, Տիտիուպոլիս, Դոմետիուպոլիս, Զենոպոլիս, Նէապոլիս,

Կլաւդիոպօլիս, Եռիենոպօլիս, Կեսարիա, Լաւզատ և Դաշրուանտ. գլոլով 'ի սոցանէ իբրև 'ի Ծովայինն Կիլիկիա պատշաճելով՝ տեղագրեսցուք անդանօր։

Սկիզբն բնակութեան Հայոց 'ի գաւառիս Սելեւկիոյ կանխէ բազմօք քան զհարստութիւն Ռուբինեանց. յիշին յամի 967 Հայք՝ դարանեալք 'ի լեռնակողմանս Սելեւկիոյ, ուստի յարձակեալ 'ի վերայ այլազգեացն՝ որոց յաւարի հարեալ էր զկողմանս Իկոնիոնի՝ թափեցին զկողոպուտն, և հալածեցին զնոսա ընդ ծովեզերս՝ երթալ 'ի Բերիա։ — Առ պայազատութեամբ մերայոց՝ նախ վասն հզօրին Թորոսի Բ՜ առի տիրեալ Կիլիկիոյ և Սաւրիոյ, որով է խմանալ և զկողմանքս Սելեւկիոյ, ընդ որ յառաջեաց թագաւորն Լեւոն մինչև յԱտալիա։ Ի սկզբան տէրութեան սորա՝ սեփական իշխան կողմանցս էր աւագագոյնն Պարոնայց նորին՝ Սիր Ադամ, որոյ սահման իշխանութեանն հասանէր մինչև 'ի Կալոնոռոս, և բովանդակ երկիրն կոչէր Աշխարհ Սիր Ատանայ. բայց զի առի 'ի Սելեւկիոյ մինչև յանուանեալ բերդն այն ձգիլ իշխանութեանն, մարթի զՍելեւկիա արտաքոյ ձեռին նորա համարել. և էր իսկ այսպէս. զի առ կենդանեաւ իսկ Ադանայ՝ Լեւոն պարգևեաց զայն Հիւրընկալ ասպետաց. այլ և բուն երկիր իշխանութեանն Ադանայ՝ թուի 'ի կրունկն գետահովտին լինել, վասն որոյ և 'ի Ծովայինն բաժնի քննեսցի։ Ի դասակարգի իշխանաց Հայոց՝ առ թագադրութեամբ Լեւոնի՝ նշանակին և տեարք բերդից ոմանց՝ որք ճանաչին արդ 'ի հովտիս Կալիկադնոսի, և հաւանօրէն 'ի սմին են և այլ ևս բերդորայք ոմանք՝ որոց խապառ անծանօթացեալ են արդ դիրք և անուանք։ Ցիշին դարձ և առ թագաւորութեամբ Լեւոնի Բ՜ 'ի ձեռս իւրաքանչիւր իշխանաց. և վասն սորին ինքեան առէ արքունական պատմագիրն, եթէ 'ի սկզբան թագաւորութեանն՝ « ինքն » նորընծայ թագաւորն գնայր 'ի Սաւրիա՝ առ 'ի տեսութիւն գաւառին, և դարձեալ գայր ուրախութեամբ » 'ի տուն իւր ». յայտ է թէ ըստ կամի և ըղձիցն գտեալ զտեղիսն՝ չէնս և հանդարտեալս։

Ըստ օսմանեան վարչութեան՝ արդ գետահովիտս Կալիւկադնոսի մեծ մասն է Իչ-Էլի գաւառի Գարամանն նահանգի, յորում բովանդակին և ծովեզերեայ վիճակք, և երկոտասան տոհմք (Աշիրէթք) Թուրքմանաց, ոչ գիտեմ 'ի ծովեզե՞րս եթէ 'ի բուն 'ի հովտիս. այլ 'ի սմա են ստուգիւ այսոքիկ. Էրմէնէկ՝ երկու վիճակք, Սէլէֆքէ, Պէլգէի ճէպէլ (լեռնակողմն), Ջիյնէ, Էվքաֆ, Սարը-գավագ, Մուդ. իսկ աշիրէթք կամ տոհմք՝ են, Սինանլը, Քէշլի, Էրէմլի, Պուլաձլը, Թաթար, Գարա Պուճուլու, Գարա Հաճիլի, Պագըշ, Կիւրճի, Սանտալը, Խայր իլի Քիւարդեան. և երեքին՝ Պէլգէի Պուզ-աղաճ, Պէլգէի Եօրկան, Պէլգէի Քէրինէ, որք թուին 'ի ծովակողմանն, առ Կելենդերաւ, որպէս և Պէլգէի Պազարճըգ առ Սելինունդեաւ. զորովք զանց արարեալ՝ ըստ հովտաց գետոյն զատուցուք գաւառիս Սելեւկիոյ երիս վիճակս, 'ի գետաբերանոյն և 'ի վեր խաղալով. և իցեն՝, Ա. Սելեւկիա,. Բ. Սարը-գավագ և Մուդ, Գ. Էրմէնէկ։

## Ա. ՍԵԼԵՒԿԻԱ

110. Մի 'ի կարի նշանաւոր կիտից բովանդակ աշխարհին Կիլիկիոյ է Սելեւկիա քաղաք, ըստ բազմապատիկ տեսութեանց, զոր և դիրք նորին հաւաստեն՝ հարևանցի իսկ ական կշռելով. քանզի կայ մերձ 'ի բերան գետոյն Կալիւկադնոսի, յաջմէ նորին, որ է 'ի հարաւոյ. իբրև ութ մղոնաւ ևեթ բացակայ 'ի ծովէն, ուր ձևացեալ կայ գոգն կամ փոքր ծոց Աղա-լիման կոչեցեալ յայժմուս, որպէս տեսցի յետոյ 'ի տեղագրի ծովեզերեայցն. և իբրև 12 մղոնաւ չափ հեռի է յարևելեան ափանցն՝ ուր թափի գետն, սակաւուք 'ի հարաւոյ գետաբերանոյն փէրչէմպէի. նստեալ 'ի բարձրաւանդակի՝ 260՛ 'ի վերոյ ալեացն, 'ի գեղեցիկ հովտի լերանց։ Ի նախնումն առի կրկին քաղաքաց լինել անդ, Ոլբիայ (Olbia) և Հիւրիայ (Hyria), զորս այլափոխեալ միացոյց Սելեւկոս Նիկանոր՝ զօրավար Մեծին Աղեքսանդրի, և բազմապատիկ շինութեամբք յարդարեալ քաղաք մի մեծ և վայելուչ՝ կոչեաց յիւր անուն Սելեւկիա, Σελευκεια, Seleucia. և զի բազում և այլ քաղաքք էին յայն անուն, սա մականուանեցաւ Սելեւկիա Քարուտ կամ Տրաքեան, յորմէ սովորեցան ոմանք լոկ Տրաքէա կամ Քարային կոչել զսա, Trachea. այլ իսկագոյն մակդիր եղև սմա՝ անուն գետոյն իւրոյ, և կոչեցաւ Սելեւկիա Կալիւկադնեան, որպէս դրոշմեալ տեսանի և 'ի դրամս քաղաքին. Σελευκέων των προς τω Καλικαδνω։ Անաղարտ



89. Դրամ Սելեւկիոյ առ Գորդիանոս կայսերաւ.

պահեցին զանունն մերայինք՝ տիրապետեալք քաղաքին, սակաւ ինչ պակաս և Թուրքք, որ ցարդ կոչեն զայն Սէլէֆքէ։ — Նախանձընդդէմ ամբարձաւ սա Տարսոնի. և մրցէր ընդ նմա ոչ միայն շինուածովքն և տուրևառիկ վաճառաշահութեամբ, այլ և ուսումնարանօքն և գիտ-

նական արուեստք. յորս յիշին ճեմողական իմաստասէրքն Աթենէոս և Քսենարքոս առ Օգոստոսիւ, և Աղեքսանդր դպրապետ Մարկոսի Աւրելիոսի։ Ընդ երկար վայելեաց և յարատեւութիւնս ազատ քաղաքի. այսպէս և 'ի քրիս_



90. Հին դրամ Սելեւկիոյ.

տոնէութեան՝ եպիսկոպոսապետական աթոռ եղև նա_հանգին Իսաւրիոյ, քանզի և երբեմն երեսնիւ չափ ա_նուանեալ ընդ իւրև եպիսկոպոսական թեմս. այսպէս և 'ի Հանդիսի թագադրութեանն Լեւոնի՝ յետ արքեպիսկո_պոսացն Հայոց՝ առաջին կարգի եպիսկոպոսն Սելեւկիոյ։ Զեկեղեցական նախապատուութիւնն պահեալ ընդ եր_կար՝ 'ի քաղաքականէն նուազեալ 'ի միջին դարս, յան_



91. Սելեւկիա Կաղիկադնեան.

գուլ ասպատակէ Իսաւրացւոց և յեղուզակաց, և յետոյ 'ի տիրելոյ իշխանութեան Արաբացւոց և Թուրքաց. զի որպէս չէր զիւրին միշտ յայսպիսի առապար աշխարհս, նոյնպէս և դժուարին էր 'ի բաց վանել զմնացեալ ազգեայն 'ի նոյն։

Նշանաւոր նախնի փառացն պաշէ Սելեւկիա զաւերակս հոյակապ շինուածոց, սփռեալս յընդարձակ աշխարհն. և գլխաւոր 'ի նոսին է Թատրոն կամ Ամփիթատր, մասամբ փորեալ 'ի քարափին, ընդդէմ հարաւոյ արեւելից ան_կեալ զհայելեացուածն. ըստ ոմանց՝ կրկէս էր երկայն աւելի քան զ150 Ք. և լայն իբրև 100, երկիկարգ աստիճանօք կամ նստարանօք. առաւել կատարէին ոլիմպիական խաղքն, յորս գայր բազմութիւն յայծ մարդկան 'ի մեր_ձակայ աշխարհաց. զառաջեաւ նորին գնին արդ կայս կայս գերդեկաց կամարակապ սիւնազարդի, զորոյ սիւնս՝ միաստամբս լինել ասէ Յովսափատ Պարպարոյ վենետիկեցի յամի 1471։ — Տաճարք երկու մերձակայք յիրեար, յորոց միոյն երեսի զեղեցիկ բոլորապարագիր շքեղանկէն քանդա_կաց ողկուզազարդ քաշեալ, և սիւնք կորնթեանք 4' տրա_մագծաւ, յորոց սակաւք կամ մի միայն կանգուն կայ. Թերևս սա էր հռչակաւոր տաճար Սարպեդոնեանն Ա_պողոնի՝ յոր խուռն դիմէին ուխտաւորք և հարցուկք. — միւսն փոխեալ է յեկեղեցի վայելուչ՝ զոր Թուրքք կոչեն Կեավուր գիլիսէսի, կարծիք կենայ ստամբք. բայց և սա աւերակ է, և առ սմին եւս սիւնք խորտակեալք. — Ջրամբար մի մեծ առ քարաճատիւ, յորմէ հանեալ են նիւթք բազում շինուածոց, 45 Ք. երկայն, 23 լայն և 10



92. Տաճար մի 'ի Սելեւկիա.

խոր, յոր իջուցանեն զարձ 'ի զարձ 25 աստիճանք ընդ նեղքին որմունս. ջուրն ազուազային գայր 'ի Մերիամ_լըգ փոսէն առ Թեկիր-ամպար քարանձաւիւ։ — Կա_մուրջ մի վեցակամար, խախտեալ այլ ոչ կործանեալ. — Գերեզմանոց մեծ 'ի հարաւոյ քաղաքին, փորեալ 'ի քա_րայրս, քառակուսի սենեկօք և դրամբք, յորս երեւին ձեւագործք վիմափոր գամբարանաց. են առ նոքօք և այլ շի_րիմք բիւզանդական մահարձանօք, այլ կիսաւերք, որպէս և որք յետամնեկինն խորշս փորեալս առ նոքօք, թերևս 'ի գիրս կանթեղաց. Թուրքք Կեավուր-սինի կոչեն զգերեզ_մանոցս զայս (Անհաւատից գերեզմանք)։ Մին եւս Գե_րեզմանոց է սակաւուք հեռի յարեւելից կողմանէ, նոյն_պէս գամբարանական սենեկօք և վիմափոր տապանօք և հաստատուն կափարչօք, յորս փորագրեալ են և ա_նուանք մեռելոցն. 'ի միոյս գրան միոյ 'ի գամբարանացն կայ յանուանէն արձանագիր Մարկ. Աւրելիոսի Բերենի_կեանու Աթենադորի որդւոյն, որ պատուիրէ մի ումեք թաղել յերումն տապանի, բայց եթէ որ ժառանգեսցի՝ տու_ժեսցի 'ի գանձ արքունի.

ΘΗΚΗ Μ' ΑΥΡ' ΒΕΡΕΝΕΙΚΙΑΝΟΥ ΑΘΗΝΟΔΩΡΟΥ ΕΝ Η ΒΟΥΛΕΤΑΙ ΤΕΘΗΝΑΙ ΚΑΙ ΜΗΔΕΝΑ ΑΥΤΩ ΕΤΕΡΟΝ ΕΠΕΝΤΕΘΗΝΑΙ. ΕΙΔΕ ΤΗC ΕΤΕΡΟC Ε-ΠΕΝΤΕΘΗ ΔΩCΕ (Τ)Ω ΦΙCΚΩ.

Ընդ մէջ գերեզմանացս և այլոց աւերակաց՝ սփռեալ են արդ ըստ Լանկլուայի 40 կամ 50, ըստ Զիհաչէֆի՝ 300 տնափարակ տունք Թուրքաց և սակաւուց Յունաց. յաւէտ շինեալք 'ի քարանց հին ձեռակերտաց, որպէս և այլ

տակաւ և անշուք հասարակաց տեղիք, մզկիթն, շուկայն և իջեվանատուն։ Բայց 'ի յետին ամս յաւելաւ շինութիւն և բնակութիւն քաղաքին 'ի ձեռն Յունաց, որք շինեցին և նոր կամուրջ։

Նշանաւոր քան զայստիկ է մեզ Բերդն Սելևկիոյ յարևմտից քաղաքին, որ և բաւական չէն մնայ՝ 'ի գագաթան լեռնակի, յոր հանէ ճանապարհ ափափոյ, կրկին ևս դժուարագնալի՝ գերբկացն կուտակութեամբ. պարիսպք բարձունք և հզօրք և կրկին փոս խրամոյ պատեն զբերդն ձուաձև, և աշտարակք խոռոչք մերձ ընդ մերձ կամարօք կցեալք ընդ իրար. 'ի միջին կան աւերակք եկեղեցւոյ, տանց, սեանց, ջրամբար և այլ ամբարանոցք վիմափորք։ Ի վերայ դրան արտաքին պարսպին՝ որ չէ բարձր որպէս զներքինն, ընդ ծաղկազարդ խաչքանդա-



93. Բերդ Սելևկիոյ եւ Գերեզմանք.

կաւ, կայ քառակուսի վէմ արձանի երիւք շրջանակօք, տասն տող բարձրաքանդակ հայկական արձանագրու֊թեամբ 'ի միջին, և մէն մի 'ի չորեսին կողմանս ներքին շրջանակին, համակ ընդխառնեալ կամ ագուցիկ տա֊ռիւք. որք զի և մասամբ եղծեալ են և չեն քաջ ընդօրի֊նակեալք 'ի գիտնոց, տակաւին ոչ լնուն զիղձ ազգային բանասիրաց, որոց անկ է ստուգել զայն. քանզի յոյժ թերակատար և մթին է փոքրիկ գաղափարն՝ որ 'ի տե֊ղագրութեան Պոֆորդի ծովապետի գտանի, նոյնպէս և Լանկլուային. այլ այոչափ ինչ նշմարի 'ի սկզբանն յերկոսին տողս.

# Ի Հայոց մեծ թվականին Ո և ՁԵ
## ամին . . .

յերրորդ և չորրորդ տողս երեւի Թագաւորն Հեթում, որ անշուշտ 'ի յետագայսն վկայի շինող կամ նորոգող կամ նուաճող պարսպացն. յեօթներորդում տողի վեր֊ջանի Կոստանդին անուն որ է հայրն Հեթմոյ, և 'ի վերջնումն Լեւոն. յաջակողմեան շրջանակին՝ անուն Սմբատայ, որպէս թուի Գունդստապլին եղբօրն Հեթ֊մոյ. 'ի վերոյ գրեալ է Յիսուս Քրիստոս ըստ Լան֊կլուայի։ Որքան և անկատար է ծանօթութիւնս, տակա֊ւին բաւական համարիմ և բարեբաղդ՝ 'ի հաւաստել զաղ֊գատոհմն շինողացն, առ որս փոխեսցի և բանս։

111. Անդստին յառաջ քան զպայազատութիւն Լեւոնի Մեծի անկեալ էր Սելեւկիա ընդ իշխանութեամբ Հայոց, գէթ յաւուրց Թորոսի Բի, որ բոլորումն տիրեաց Կիլի֊կիոյ. զի Լեւոն անդէն 'ի սկզբան տէրութեան իւրոյ պարգեւեաց ղքաղաքն զայն՝ Շահանշահի, որդւոյ Զոր֊տուանելի Սասնեցւոյ և քեռ կաթողիկոսին Գրիգորի Տղայոյ. յետ մահուան նորա յամի 1194, տուաւ տեղին Կոստանց իշխանի՝ որպէս թուի ազգականի Կամարտիոս յոյն կամ լատին տոհմի. քանզի առ թագաւորութեամբ Լեւոնի յիշի սա բերդատէր Սելեւկիոյ, իսկ Կաւմառ֊տիասն՝ իբրեւ բերդ մի ընդ իշխանութեամբ հօր նորին՝ Հեռլի Սեբաստոսի։ Օտար պատմիչք խաչակրաց յիշեն յամի 1190 ընդ Կոստանցի և զՊալտին եղբայր նորա՝ Կամարտիասս, հրաւիրակս առաքեալ 'ի Լեւոնէ ընդ ա֊ռաջ մեծի կայսերն Գերմանացւոց Փրետրիկի Ա, 'ի գալ նորա յազատութիւն Երուսաղեմի, յոր ոչ ժամանեաց, ջրահեղձիկ եղեալ 'ի յորձանս Կալիկադնոսի. և զդիակ֊նըն ցրտին ընկալաւ Սելեւկիա սգով համակեալ, հան֊դերձ իշխանօք նորին և բանակաւն, և յուղարկեաց 'ի Տարսոն և յԱնտիոք։

Յետ քան ամաց սյոր դիպուածոյ՝ Լեւոն յերկրոռ֊դան ամի թագաւորութեանն՝ զքաղաքս Սելեւկիա հան֊դերձ սահմանօքն, ընդ որս և զՆորբերդ և զԿամառտիաս՝ պարգեւեաց Ասպետաց Հիւանդանոցին Երուսաղեմի, յո֊րոց ոչ սակաւ օգնութիւն էր գտեալ 'ի մարտս պատե֊րազմաց և յընդարձակելն զտէրութիւն իւր, և յանձնեաց 'ի հրամանատար ասպետացն՝ Կարին կամ Կէրէն անուն, ըստ Լատինաց Garinus de Monte Acuto, ըստ Փռան֊կաց՝ Guerin de Montaigü, ծանուցանելով զայս (յա֊պրիլի, 1210) Քահանայապետին Իննովկենտի Գ, և խնդրելով 'ի նմանէ վաւերացուցանել զպարգեւագիրն. որպէս և արար Քահանայապետն կոնդակաւ, յ'3 օգոս֊տոսի այնր ամի. և մնաց տեղին ոչ սակաւ ժամանակս 'ի ձեռս ասպետացն այնոցիկ, սիրելեաց և նիզակակցաց Հայոց։ Ասպետն բերդաւագ Սելեւկիոյ յամին 1214 կոչէր Ֆերալտ տէ Պառրաս, (Frater Feraldus de Barras, Castellanus Selephii), և ստորագրեաց այլոյ պարգեւագրի կամ դաշնագրի Լեւոնի։ — Ի սկզբան թագաւորութեան Հեթմոյ՝ մինչ այն ինչ պատկեալ էր ընդ Զապելի, յեր֊թալ սորա տեսանել զմայր իւր՝ որ էր 'ի բերդին Սե֊լեւկիոյ՝ առ ասպետսն իջեւանեալ, դրդեալ 'ի նմանէ՝ ոչ կամէր դառնալ առ փեսայն դեռարբոյս. փութացաւ թագաւորահայրն Կոստանդին պաշարել զբերդն և նե֊ղել զասպետսն՝ զի տացեն զթագուհին. իսկ նոցա առ վայր մի ընդդիմացեալ, ապա երկուցեալ թէ գուցէ Հայք միաբանիցին ընդ Իկոնիացիս և խաղառ 'ի բաց վանեսցեն զնոսա, բայց և ոչ կամելով մատնիչք երեւել և ան֊հաւըլնկալք դշխոյի գտեր պարգեւողին իւրեանց, ա֊սեն. « Զբերդս՝ Լեւոն թագաւորն ետ մեզ. մեք չկարեմք » ասել ընդ իւր դուստրն, թէ ել 'ի բերդէս. ապա մեք » կու եղնենք, դուք առէք զբերդն ու զինքն։ Եւ այս ցեղ » առին զՍելեւկիա ու զթագուհին[1] »։ Յայսմ ժամա֊նակի հրամանատար ասպետացն կամ բերդաւագ կոչէր Պերդրան։ Ի նմին իսկ ամի վերատառեալ է Հեթմոյ 'ի ճակատու բերդին՝ զարձանագիրն զորմէ ճառեցաք վե֊րագոյնդ։ — Երեւի 'ի բանից աստի քաջ ամրութիւն տե֊ղւոյն, զոր չէր հնար առնուլ յարձակմամբ. որ և սակա֊ւուք յառաջ հաւաստեալ էր՝ յարշաւանաց Ալայէտտին սուլտանի, յետ մահուանն Լեւոնի. զի « Էառ զխաւ֊» րիոյ երկիրն մինչ 'ի Սելեւկիոյ դուռն. բայց զՍելեւկիա » Ուսպիթլուն (Հիւանդանոցին) ֆրերքն պահէին՝ օգնա֊» կանութեամբ Հայոց։ Իսկ Պարոն Կոստանդին Պայլն՝ » զի խելօք էր՝ իմաստութեամբ անցոյց զաւուրքն[2] », և ապա 'ի դէպ ժամանակի թափեաց անդրէն զկորզեալ երկիրն. բայց զի միջասահման էր սա Հայոց և Թուրքաց՝ բազում անգամ ասպարէզ լինէր բանաբարութեան և կռուոյ. մանաւանդ յորժամ զօրացաւ յոխորտ տոհմն Գարամանեաց՝ 'ի կէս ԺԳ դարու, և խարէութեամբ իմն տիրացաւ նմին, ըստ աւանդութեան նոցին պատմչաց. քանզի 'ի լինել երբեմն, ասեն, մեծի տօնավաճառի քրիստոնէից՝ 'ի կողմանսն, և 'ի գալ անդր 'ի զնին՝ նաեւ պահապանաց բերդին Սելեւկիոյ, միաբանեալ ոմանց 'ի Թուրքմանացն հետեւողաց Գարամանի՝ այլափոխելով զտարազ իւրեանց 'ի ձեւ քրիստոնէից, և պատատեալ զղէմս իւրեանց, մտին 'ի բերդն և տիրացան. յայնժամ աղաչեաց հայր Գարամանին Նուրէ-Սօֆի՝ զսուլտանն Ալայէտտին՝ որոյ սիրելի էր, և պաշտպանութեամբ նո֊րին յապահովեաց զտեղին 'ի ձեռս որդւոյ իւրոյ[3]։ Յետ այսր յիշի 'ի պատմութեան մերում Բ Լեւոնի 'ի սկզբան թագաւորութեանն (1271) յայց ելանել կողմանց Խաւ֊

1. 2 Սմբատ Գունդստապլ Պատմիչ։

3 Գեւորգ, Պատմութիւն Օսմանեանց։

րիոյ. այլ ոչ առ սովաւ և ոչ առ յաջորդօքն՝ ոչ ևս յիշի Սելեւկիա յանուանէ 'ի պատմութեան մերում. և ոչ իսկ եպիսկոպոսունք նորին, յորոց զերկուս միայն գտանեմ յիշեալ ԺԲ դարու, զԲասիլ յամի 1175 'ի մեծի ժողովին Հռոմկլայի, և զԹորոս յամի 1198։

Իբրև միով դարու զկնի բարձման պետութեան Հայոց՝ վենետիկեցին Պարպարոյ յայց ել և Սելեւկիոյ (յամի 1471), և հինգ մղոնաւ հեռի ասէ 'ի ծովէ. զգետն հաւասարէ Բրինտայ գետոյ հայրենեաց իւրոյ, և զԹէատրոնն՝ ամփիթատերն Վերոնայ քաղաքի, այլ մեծագոյն ևս և միաստանի սեամբք. այսպիսիս ասէ և զկամարսն առ լերամբն, որոց և մի մասն 'ի նմին իսկ 'ի լերինն հատեալ. յոր 'ի վեր ելանելով՝ ժամանէր 'ի դրունս առաջին պարսպաց բերդին, և տեսանէր աստի և անտի մէն մի բուրգն. դրունքն երկաթեղէնք էին առանց փայտեայ պահանգաց, իբրև 15' բարձունք, կիսով չափ լայնք, քաջ յոյժ յղկեալք և յարդարեալք՝ որպէս թէ արծաթեղէնք, թանձունք և հզօրք. նոյնպէս և պարիսպքն ստուարք, 'ի ներքուստ կողմանէ խճողեալք, որպէս և պատուարքն, իսկ արտաքուստ կարծրակուռ հողով պատեալ, և յոյժ զառ 'ի հակ, մինչև անհնար լինել վերելից. և այնքան լայն էր հողակոյտն զբերդաւն, զի 'ի ստորև երեք մղոնաչափ էր շրջապատին, իսկ 'ի գագաթանն և ոչ մի մղոն, որով բերէր զնմանութիւն դիր մի շաքարի։ Ի միջի պարսպացս այսոցիկ էր Դղեակն Սելեւկիոյ՝ առանձին որմովք և ամուր աշտարակօք. միջոց կրկին պարսպացն ընդարձակ էր աւելի քան զ'30 քայլ. որպէս զի 'ի լինել հարկի՝ մարթ էր վարել անդ զերկիրն և քաղել երեք հարիւր քոռ (stara) ցորենոյ։ Ի միջի բերդին մեծ քառակուսի փոս մի էր վիմափոր, հինգ քայլաչափ (passa) խոր, 25 երկայն, 7 լայն. էր անդ մթերեալ փայտ բազում, և ջրամբար մեծ անսպառելի ջրոյ[1]։

Գրեաթէ ոչ այլազգ ինչ տեսին և գրեցին յետ չորից դարուց՝ 'ի մերումս յայսմ՝ նոր քննիչք տեղւոյն, Պոֆորդ, Լապորտ, Չիհաչէֆ, Լանկլուա, և այլք։ Ցետինս նստեալ 'ի վերին ատիճանս թատերն՝ նկատէր յաջմէ կողմանէ զծովն Կիպրոսի, յահեկէ՝ զլերինս Տաւրոսի. յառաջոյ տարածեալ կայր չքնաղ համատեսարան, Կալիւկադնոսի թաւալելով զալիւն ընդ դաշտ՝ յռեալ հողմածաղկօք, ծածկեալ վրանօք Թուրքմանաց և խայտացեալ երամովք անդէոց և հօտից Նիւրիւք Թուրքմանաց՝ ընդ տեսչութեամբ հրացանաւոր և նիզակաւոր հեծելոց. մեծամեծ սօսիք թանձրասաղարթք հովանանային 'ի տապոյ տօթոյն՝ 'ի վերայ համօրէն ընտանեաց և կանանց պարապելոց 'ի հիւսել զկապերտս 'ի չարս ծառոցն, որոց բունք փոխեալք էին յանկոցս (métier)։ Հնչմունք փողոց, բառաջիւն զուարակաց, խոխոջանք ջուրց գետոյն՝ գործէին արդարև համաձայնութիւն վսեմական. մերձ ընդ մերձ լսելի լինէր բոմբիւն հրացանի՝ յետ դոյզն լռութեան, կրկնեալ 'ի հարիւրաւոր արձագանգաց լերանց, դռոյթ հեծելոց ոստուցելոց 'ի մերձակայ պուրակէ ուստեք, որընթաց երիվարօք հետամուտ լինելով բորենւոյ կամ չան վայրենւոյ, զորս ոգեսպառ առնէին բարակքն տարոսականք մթնագոյնք հանգոյն շնագայլից։ Ցոլէ առ զարմացմամբ իմն զավորականն յարևելս՝ անուաւոր և դուլաւոր ջրհանն՝ յոռոգումն պարտիզաց տեղւոյն, յորս լինին ընտիր սեխենիք և ձմերուկք, այլ և կիտրոնիք, ձիթենիք և այգիք. տածին և մեղուք, յորոց նիւթեալ մոմոյ շահ մեծ է լեռնականացն։

112. Մերձաւոր սահմանք Սելեւկիոյ, որոց հարկ էր չինաչատս լինել, անծանօթ մնան յինէն, ոչ հանդիպեալ ուրեք նոցին տեղագրութեան. միայն Չիհաչէֆ նշանակէ երկժամու և աւելի 'ի հիւսիսոյ կողմանէն՝ յոր տանի հին և խանգարեալ արահետ, փոքրիկ տաճար մի կորընթեան սեամբք չորիւք՝ 'ի վերայ ըլեր միոյ, և այլ ևս սիւնս անջատս։ Մերձագոյն ևս է այլ տաճար՝ յունական արձանագրաւ 'ի ճակատուն, այլ դժուարամատոյց վասն խանգարման ճանապարհին, դերբկաց և մացառաց։ — Մօտագոյն տեղի նշանակեալ 'ի քարտս՝ է Վալաճոտիզ կամ Վլաաճոտիս գիւղ իբր ութ մղոնաւ 'ի հիւսիսոյ արևմտից յաջմէ գետոյն. և մերձ 'ի սա յարևմտից կուսէ Իկօբոյեկի գիւղ՝ 'ի գլուխ վտակի փոքու, առ որոյ խառնըրդումն է Քէփէնէկ գիւղ, և մերձակից նմին յարևմտից հիւսիսոյ՝ Քաչ-քէօյ (թերևս Պաչ-քէօյ), 'ի 540 Չ. բարձու քարափան անդնդահոս գետոյն, վասն որոյ և յոյժ ահաւորահայեաց. գեղեցիկ է և տեսարանն, միանգամայն նկատելով զխոտորընթաց փրփրացեալ հոսանս գետոյն 'ի վհական խորուղն, և զբարձր բարձր լերինս Տաւրոսի թատերաձև ամբարձեալս մի ըստ միոջէ, զվսեմական տեսիլ Ալպեայց կերպարանելով, հանդերձ առաւելութեամբ Նարընջարեր կլիմային, ըստ ասից Չիհաչէֆի[2]. որ՝ և շուրջ զՔէփէնէկաւ ետես աճեցունս՝ զկիտրոնի, զնռնենի, զմրտենի և զսօսի։ — Փարսախաւ կամ աւելի հեռի 'ի սոցանէ յայնկոյս (յահեկէ) գետոյն է Չիֆտլիկ գիւղ։ Ի հիւսիսոյ արևմտից սորին երեք կամ չորս մղոնիւք բացագոյն են մուտք Սարը-գավաց վտակի 'ի

1 Ascendendo in monte per andare nella terra, a man manca si veggono assaissime arche, parte di un pezzo.... separate dal monte, e parte cavate nel proprio monte. Ascendendo più suso si trovano le porte della prima cinta della terra, che sono quasi alla sommità del monte: le quali hanno un torrione per lato, e sono di ferro senza legname alcuno, alte circa quindici piedi, larghe la metà, lavorate politissimamente, non meno che se fossero d'argento, e sono grossissime et forti. Il muro è grossissimo, pieno di dentro con la sua guardia davanti, il quale di fuora è carico e coperto di terreno durissimo, tanto erto, che per esso non si potè ascendere alle mura, il qual terreno gli va d'ogni intorno, ed è tanto largo dalle mura, che da basso circonda tre miglia, ed in cima il muro non circonda più di uno, ed è fatto a similitudine d'un pan di zuccaro: dentro di questa mura è il castello di Seleuca con le sue mura, e torri piene, tr'al quale et le mura della prima cinta è tanto terreno vacuo, che a un bisogno faria da 300 stara di frumento: è distante la cinta dal castello passi 30 e più. Dentro del castello è una cava quadra fatta nel sasso, profonda passa cinque, lunga 25 e più, larga circa sette. In questa erano legne assai da munitione, ed una cisterna grandissima, nella quale non è mai per mancare acqua. — G. BARBARO, presso *Ramusio*, II, 100.

2 Le village de Kach-Koï, qui est à une hauteur de 538 mètres sur les flancs d'un des rochers qui surplombent la rivière, offre un magnifique coup d'œil; car le regard embrasse en même temps le cours tortueux du torrent qui bouillonne dans le fond d'une gorge étroite, et les massifs montagneux de la Cilicie, échelonnés en amphithéâtres, et rivalisant par leur aspect avec les scènes les plus grandioses des Alpes suisses, transportées sous un ciel qui fait mûrir les oranges. — TCHIHATCHEFF, *Asie mineure*.

գետն՝ յահեկէն. առ որով նշանակի Հիսար գիւղ, որ առակ բերդ նշանակութեամբն փաստս ընծայէ մերձաւոր մեծի և հզօր բերդի լինելոյ, թէ և չէ ծանուցեալ յարդեացս քննութենէ, որպէս և ոչ որ 'ի հարաւոյ նորին Տեկիրմէն գալէսի (Ջաղացաբերդ). որք տան կարծիս և խղճ խնդրելոյ զվայրօքս զՆորբերդ (Castellum Novum, Castel Nuovo), զոր յիշեցաք ընդ Սելեւկիոյ պարգևեալ 'ի Լևոնէ առ Երուսաղեմեան ասպետսն, և զոյգ նմին զԿամարտիաս, և մերձաւոր իսկ անշուշտ. քանզի և զոյգ երկոցուն Տէր էր Հեռի սեբաստոս, մի 'ի գլխաւոր պարոնայց առ Մեծաւն Լևոնիւ. և զորոյ որդին Կոստանց տեսաք դեսպան առաքեալ առ Փրետրիկ կայսր. որ զի և համանունաբար Կամարտիաս մականուանի՝ գուշակի տէր լինել այնր երկրորդ բերդի, ընդ վերպատեաչութեամբ հօր իւրոյ. 'ի լատինն գրի Camardesium կամ Camardius, յիտալականն՝ Camardo. յունական թուի ծագումն և ոչ հայկական, որպէս համարել կամի Լանկլուա՝ 'ի կամար բառէ, այն զի զնոյն զայս նշանակէ և յոյն բառն χάμαρα: Յամին 1207՝ զտեարս սոցին, «Թագաւորն Լևոն յաղագս պատճառի ինչ իրիք կալաւ, » զՍեւաստիոսն Հեռի, և զորդիս նորա զԿոստանց Կումարտիասն և զՃաւուլին և զՊաղտինն. և եդ 'ի կապանս և 'ի բանտի. և Հեռի փեսայ էր Տէր Յովհաննիսի » կաթողիկոսին Հայոց. և յայսմանէ եղև խռովութիւն ընդ թագաւորն Լևոն և ընդ կաթողիկոսն Տէր » Յովհաննէս», և այլն: Հեթում՝ եղբայր Ս. Լամբրոնեցւոյն «համոզեալ հաշտեցոյց զհայրապետն և զթագաւորն. և նոյնժամայն ազատեաց զորդիսն Հեռէ՝ » զՃաւուլին և զՊաղտինն, և միւսն (Կոստանց) մեռեալ » էր», անշուշտ և հայր նորա: Ի բանտի էին սոքա՝ մինչ Լևոն ետ ասպետացն զբերդորայսն, և հաստատեաց զտուրսն քահանայապետական վաւերականաւ: Թուի 'ի ձեռս նոցին մնացեալ այնուհետև Կամարտիասոյ, զի ոչ ևս յիշի 'ի պատմութեան. այլ Նորբերդի տէր՝ յետ երկար ժամանակաց յայտնի Ստեփանոս ոմն յամս 1317-20, յորս դեսպանութեամբ առաքեալ էր յՕշնէ թագաւորէ առ Քահանայապետն և առ թագաւորն Փռանկաց. և մինչ տակաւին դեգերէր յարևմուտս՝ մեռաւ թագաւորն Հայոց, և պայլն Օշին որ զամենայն իշխանութիւն գրաւեաց՝ ընդ նմին և զկալուածս ասպետացն նուաճէր կամ կապտէր. բայց ըստ ոմանց՝ նոյն ինքն թագաւորն Օշին գրաւեալ էր, և ասպետացն զինու զօրութեամբ հակառակեալ նմա. վասն որոյ միջնորդ եղեալ Քահանայապետին՝ յորդորէր զՕշին դարձուցանել առ ասպետսն, և սոցա պատուիրէր պատկառ կալ պայմանացն՝ որովք շնորհեալ էին նոցա տեղիքն: Յիշին տեղիքս 'ի ձեռս ասպետաց՝ ցկէս ԺԴ դարու, յորում (յամի 1347) ոչ ունելով հրամանատար՝ յանձնէր Քահանայապետն առ կարգապետ ասպետացն՝ կացուցանել տեսուչ զԴամարիոս ոմն (Damario di Baucio): — Ոչ մոռասցուք աստանօր և զՊունաառ բերդ, զի յիշի զոյգ Սելեւկիոյ ընդ իշխանութեամբ լինել Կոստանդեայ՝ յաւուրս թագաւորութեան Լևոնի. և այնու գուշակի ոչ աննշան լինել տեղի և ոչ հեռի 'ի մեծէ բերդաքաղաքէն. այլ յետ այնր ոչ ևս գտանեմ 'ի պատմութեան զյիշատակ տեղւոյն: — Ի կողմանս յայսոսիկ և թերևս առ միով յաւերակաց յիշեցելոց 'ի հիւսիսոյ արևմտից Սելեւկիոյ և յելից հարաւոյ



94. Դրամ Դիոկեսարիոյ.

Մուդայ, պատշաճին դիրք Դիոկեսարիա քաղաքի, ըստ հնաքննին աշխարհագրաց. թէպէտև ոչ հռչակաւոր 'ի պատմութեան, այլ զի գտանին և դրամք հատեալք 'ի նմին առ կայսերօք Հռովմայ, հաւաստի ոչ աննշան եղեալ երբեմն:

## Բ. ՍԱՐԸ-ԳԱՎԱԳ ԵՒ ՄՈՒԴ

113. Վերոյիշեալ գետակն Սարը-գավագ յանձուկ ձորակին բովանդակէ վիճակ մի փոքրիկ և համանուն՝ Սարը-գավագ, (որ թարգմանի դեղին բարտի), բարգաւաճ բուսաբերութեամբ, ունելով և ձիթենիս և մարգաճակս բրնձոյ. գլխաւոր աւանն՝ որ և սոսկ Գավագ կոչի՝ կայ 'ի գլուխ ձորոյն. յեզերս սորին նշանակին գեօղք մերձ յիրար՝ 'ի հիւսիսոյ ընդ հարաւ, Ջուգուր, Նարկիճ, Սաւարլու կամ Սաքարլու, Շահալար, Պուր քէօյ, Կէօմէշեր՝ երեք կամ չորս մղոնօք 'ի հիւսիսոյ նախայիշեալն Հիսարայ: Քաջ պտղաբերք են սահմանք վիճակիս, յորոյ մրգացն տանին և 'ի բացակայս, որպէս 'ի Լարանտա, ուր ճաշակեաց և Հէմիլդըն յամի 1837 (9 օգոստոսի) զազնիւ թուզ և զխաղող այգեաց նոցին: — Ի հիւսիսի արևելից Սարը-գավագայ և 'ի հարաւոյ արևմտից Տաւրոսական մեծի լերին Կուկլուկի, քննելի են տեղիքն Օլուգ, (որ ըստ նշանակութեանն՝ երևի փող մի լինել անցից լերանց), Ջօմագ-հիսար բերդ աւերակ և լեառն, յորոյ հարաւոյ նշանակի և աւերակ հին դրան. իսկ 'ի հիւսիսոյ՝ գեօղ կամ հանգրուան Գարադաշ-եայլա (Արօտք Սեւքարի), և Օճուտ գեօղ՝ 'ի խաղս Սորքունն-սու գետոյ: — Իբր երկու փարսախօք 'ի հարաւոյ Ջօմագ-հիսար լերին, կրկին և աւելի բայց հաւասարաչափ հեռի 'ի Սարը-

գաւառաց որ յարեւմտից, 'ի Լամասայ՝ յարեւելից, և 'ի Սելեւկիոյ՝ 'ի հարաւոյ, կայ անուանեալն Ուզունպուրճ (Երկայն բուրգն) ամարանոց Թուրքմէնից Պէլզէի ճէպէլ վիճակի. 'ի 1580 Զ. բարձու Նշմարին անդ աւերակք հին քաղաքի. յորմէ ոչ հեռի՝ դուռն եռակամար, 16 կորնթացի սեամբք՝ յերիս չարս, մնացուածք պարսպի, և բուրգն մի մեծ քառակուսի, և արձանագիրք յունականք, զորս ոչ ժամանեաց քննել տեսող սոցին Զիհաչէֆ: Ի հարաւոյ սոցին են և այլ նշանաւոր աւերակք, զորս յիշեսցուք 'ի տեղագրութեան Ծովային Կիլիկիոյ:

Ցարեւմտից Սարը-գավազի է Մուդ կամ Մուտ, փոքր վիճակ, որոյ համանուն քաղաքաւան իբր տասն մղոնաւ 'ի Հր. Մ. Սարը-գաւազ աւանի՝ կայ 'ի բարեզուարճ հովտի, 1100 Զ. բարձու, առ խառնրդով փոքու վտակի (զոր ոմն Կիրամա կոչէ) ընդ Պուղազչի գետակի, և ոչ հեռի 'ի սորա խառնրդոց ընդ մեծի գետոյն, 'ի վերայ հասարակաց ճանապարհին որ տանի 'ի Լարանտա: Աւերակք հռոմէական շինուածոց յայտ առնեն զաղթականի մեծի նստեալ անդ, և ըստ բանից ինչ նախնեաց՝ համարին ոմանք լինել զսա Կլաւդիանուպօլիս, բնակեցուցեալ 'ի Կլաւդեայ կայսերէ. Բիդդէր նոյնացուցանէ զսյն և ընդ հնոյ սրբազան քաղաքի Ոլբայ, ուր Արամազդայ տաճարն էր և քրմարան բազմահոյլ, կանգնեալ յԱյասայ որդւոյ Տեւկրեայ, որպէս հաւաստէ և դրամս այս: Զայսոսիկ Թողեալ 'ի քննութիւն հնասիրաց



95. Դրամ Ոլբայ առ Օգոստոս կայսերաւ [1].

արտաքնոց, յիշեսցուք միայն զաւերակս Բերդին, 'ի բլրի՝ 'ի հիւսիսակողմն, որոյ մնան տակաւին մասն մի պարսպաց մարտկոցօք և քառակուսի աշտարակօք, յարեւմտակողմանն ունելով զգղեակն կրկնապարիսպ կամ աշտարակ մի մեծ բոլորշի և եռայարկ, 'ի ստորեն՝ 14' Թանձր որմովք, յորոց մէջն գործեալ են սանդուղք վերնլից. վերին մասն 6' Թանձր է. — Մնացուած տաճարի միոյ, սիւնաշար կամարադրունք, խարիսխք և բեկորք կանաչորակ կճեայ սեանց. ընդ որս և մզկիթք և բաղանիք 'ի Գարամանեանց շինեալք, և շիրիմ միոյ 'ի տիրապետողաց այնր տոհմի: Աւերակք հին քաղաքին կան 'ի բլուրս 'ի Հր. և 'ի Հր. Մ. Նորոյ աւանիս, յորում 46 տունս միայն գրէ Տէվիս (1875). 'ի միւսում ամի (1876) Գոլինեօն ասէ հազիւ 200 տունս: — Են 'ի Մուդ մնացորդք հին շինուածոց, բեկորք սեանց առ աղբերըն, ուր 'ի հնումն հրապարակ եղեալ երեւի, նոյնպէս և յայլ կողմանս. 'ի հարաւոյ կուսէ բերդին կանգուն կան եօթն սիւնք և սեամ դրան մեծի [2]: Կիսաժամաւ 'ի Հս. Մ. քաղաքաւանին ևս կան ընդարձակ աւերակք և շիրիմք:

114. Ի սահմանս Մուդայ նշանակին գեօղք սակաւ, յարեւելից կուսէ՝ Օլատիճ 'ի լեռնոտին, 'ի հիւսիսոյ՝ Պաշապանըր, Էշպէյլի և Զալըմա յաշհեկէ, Գաւոր քէօյ յաջմէ Պուղազչի գետոյ, յորոյ վերայ և կամուրջ Խոճա-քէօփրիւ կոչեցեալ: — Վերագոյն 'ի հիւսիսակողմն տասն մղոնաւ, Թերեւս և պակաս, կան աւերակք բերդի միոյ



96. Յատակաձեւ Մուդ բերդի.

Մաուղա-գալէսի կոչեցեալ, 'ի կատար քարալերին՝ որ հատեալ և տաշեալ՝ կերպարանեալ է 'ի քառակուսի աշտարակ իմն, անմատոյց յերից կողմանց, և դժուարամատոյց յոյժ 'ի Հր. Եւ., 2000' կամ 2500' ուղղորդ սեպացեալ 'ի վերոյ գետահովտին, և կամրջաւ միայն մերձենալի. յոր փորձեաց Տէվիս (23 յունիս, 1875) մտանել և քննել. ահաւոր յոյժ ափափայս և վիհս ցնորեցուցիչս, անդունդս և վախս լպրծուտս եռեւ, և քարանձաւս՝ ապաւէնս պահնակաց, հետս պարսպաց և աշտարակի միոյ. և դոյզն տափարակ տեղի 'ի հարաւակողմն գագաթանն, որ հանէր 'ի վերին կլայն՝ ընդ դուռն աշտարակի միոյ 'ի գահաւանդի կանգնելոյ իբր 40' 'ի վերոյ, յոր պարանօք միայն մարթ էր վերելակել, այլ դերբկօք վիմաց անկելոց խցեալ էին մուտքն: Ի բարձու աշտարակին նշմարեցաւ արձանագիր արաբացի 586 Թուականաւ (1190 ամ Փրկչին) Մահմուտ անուամբ սուլտանի: Այլ գրեաթէ 'ի նմին ժամանակի յետ ՃԲ զարու՝ ընդ հայկական ձեռամբ (Լեւոնի) նուաճեալ էր տեղին. քանզի մի 'ի լիճ պարոնայց սորին էր տէր տեղւոյն Կիռ-Սակ անուամբ, այսինքն է Պարոն Սահակ, որ և յամի 1217 'ի պաշարմանն Կապանայ 'ի Քէյքաուզ սուլտանէ՝ ընդ Կոստանդնի Պայլի և ընդ այլոց իշխանաց գերի անկաւ և ընդ նոսին փրկանաւորեցաւ 'ի Լեւոնէ. և կոչէր տեղին 'ի մերայոցս՝ Մաղվայոյ բերդ, որոյ տեսցի պատկեր գունաւոր ('ի հանդիպոյ իջիս, Թիւ 97): Սա է հաւանօրէն կոչեցեալն 'ի Բիւզանդացւոց Մելուսոյ բերդ, Μελοῦος, զոր գրաւմբ էած Վասիլ Ա կայսր, յետ նուաճելոյ զքաջ ամուրն Լուլուայ, որպէս աւանդէ Կոստանդին Պորփիւռոժեն [3]:

[1] Ցանուն Էյասայ քրմապետի կեննատեանց և Լալասեանց:
[2] Տէվիս, 333-335:

[3] 'Αφ' ου και τό Μελοῦος κάστρον προς αυτον εκουσίος μετέθετο. — Const. Porphyrogen.



98. Լարանտա = Գարաման



97. Մաղվայ Քարաբերդ

**Ցարեւմտից Մուղայ** իջանէ հզօրագոյնն օժանդակաց գետոյն Սելեւկիոյ՝ Պուզագչի, յոլովիւք մանր վտակօք և քարավազ ջրվէժ հոսանօք, ընդ մէջ Թօփչի կամ Թօփ-կէտիկ, Ալիպէկ[1] և Մարաշ լերանց։ Գլխաւոր չինաւան ընդարձակ ձորահովտին՝ նշանակի 'ի միջակողմանն, Կիրասուվքա? անուն, յերի գետակին, և յարեւմտից կուսէ Նորին հովիտք կամ արօտք Կրասուվքա-եայլասը. 'ի վերնակողմանն են գեօղքն Պուձագ-գըշլա, և Պօզդան-սու՝ կամ Պօզդան-եօզի՝ 'ի ստորոտս համանուն լերին 'ի 500 Զ. բարձու, առ գետեզերբն, որ 'ի ձմերանի վարարեալ անանց լինի։ Բնակիչք կողմանցս, ուր ագաւ Չիհաչէֆ յամի 1848 (25 հոկտ.), փոխանակ զրաստու՝ ուղտս վարէին 'ի բեռնակրութիւն՝ յախախայս անդ։ Ստորոտք Թօփ-կէտիկ լերին անտառախիտք են, գագաթունքն ց՚2000 Զ. բարձրութեան լերկագոյնք՝ յերկուս տրոհին յանցից ճանապարհի, որ ընդ մէջ 5-600 Զ. բարձանց՝ իջուցանէ 'ի ձորն Պալքէսէնի։

**Ի** հիւսիսոյ յիշեալ գիւղիցս ձորակ մի է Գարրան-տէրէսի անուն՝ փոքու վտակաւ, և կոչի այսպէս վասն յոլովութեան մախրի ծառոց, Գարրան-աղաձի կոչեցելոց 'ի Թուրքաց։ Ի ստորեւ՝ սակաւ մղոնօք յարեւմտից Խօճայ կամրջին է Տորլա գիւղ, իբր 30 տամբք. և ևս 'ի ստորեւ՝ Ջիֆտլիկ գիւղ՝ մերձ 'ի Գասըր քէօյ։ — Ի փոքու ձորահովտիս յայսմիկ, մերձ 'ի Տորլա՝ կան աւերակք հնոյ և հնանուն քաղաքի Պալէապօլիս կոչեցելոյ, Παλαίαπολις, Պալապօլ 'ի միջին դարս, և զարդիս Պալապօլու, գիւղ սակաւատուն, գրեաթէ հաւասար հեռի յԷրմէնէկայ՝ յարեւելից Նորին, և 'ի Մաղվայոյ՝ յարեւմտից. տէր յետնոյս՝ Կիռ Սակ՝ տիրէր և Պալապօլի առ Թագաւորութեամբ մերոյս Ա Լեւոնի։ Աւերակքն կան 'ի վախուտ քարաբլրի, 'ի հիւսիսոյ կողմանէ ունելով անթիւ չիրիմս որձաքարեայս անարուեստս և խաչանիշս, եղծեալ արձանօք և մանրեալ քանդակօք, քանզի խուզեալ և խանգարեալ են յագահ ձեռաց. յոմանս 'ի նոցանէ երևին պատկերք առիծուց կամ յովազուց. են և վիմափոր գերեզմանք. իսկ քաղաքին միայն դրբրուկք աւերակաց մնան և դոյզն հետք պարսպաց, զորս գրեաթէ ծածկեն անտառացեալ գիհիք մեծամեծք՝ մինչև 11՝ տրամագծաւ։ Տեղացի Թուրք առաջնորդ անգղիացի ուղևորին՝ որ յայց եղ տեղւոյս յամի 1875 (25 յունիսի), ասէր, յիշխանութեան Հայոց մնացեալ քաղաքիս և ցամն 1382, զոր Գարամանօղլու իշխողն պաշարեալ և մենքենայիւք բաղխեալ 'ի մերձակայ բլրոյ՝ էառ, յետ բուռն մաքառման, յորում անկան և յոլովք 'ի մսլիմացն. յարձանագրութեանց գերեզմանաց սոցին ստուգեալ էր զԹուականն[2]։ Եթէ ստոյգ կամ հաւանելի՝ արժան է և ազգային քննութեան։ — Առ հինս ոչ յիշի քաղաքս այս, այլ յեկեղեցական վիճակագրութեան՝ 'ի նահանգին Պամփիւլիոյ, և կարծի յոմանց մերձ 'ի Կելենտրի, ուր և յիշեցուք, այլ արդ ոչ լսի անդ այս անուն։ — Ի սահմանս յայսոսիկ՝ ուր առատ բուսաբերութիւն է ծաղկանց, խնամով դարմանեն մեղուս, և հաւաքեն զվաստակ նոցին առատ։

Ցարեւմտից Պուզագչեայ է անձուկ ձորահովիտն Պալքէսէն կամ Պալըրգան[3] գետակի, ընդ մէջ Թօփ-կէտիկ լերին և լերանց անջրպետաց Էրմէնէկ վիճակի. երեք ձորոյն կրաքարուտ են հորիզոնական նստիւք, յորս գեղեցիկ քարաժժմակք երևին. բազում քարայրք են անդ երկայն փողովք և սիւնաձևովք, և յատակ ձորոյն լի է կոչկոռօք. յորոյ 'ի ստորին կողմն՝ մերձ 'ի խառնուրդն ընդ Կէօք-սու գետոյ՝ նշանակին Մուղալլար և Եավէնտ գիւղք. իսկ վերին կողմն որ ընդ արևմուտս հիւսիսոյ է՝ բազում ձորակս և խոխոմս լերանց երևեցուցանէ, ըստ քարտից, զի ստորագրութեան կողմանցս ոչ հանդիպեցայ։ — Ի լեռնամէջս անդ 'ի սահմանակցութեան Գարամանի 'ի Մտ. Հս. Նորին՝ նշանակի աւան մեծ Փէրլըտղանտա, Փիլէրկոնտա կամ Փիլաւկանտա գրեալ յԵւրոպացւոց, գլխաւոր չէն համանուն վիճակի, որ կոչի և Խատէմ, զքաղաքի կերպարանս բերելով յանչէն վայրի. բայց սահմանքն զուարճալիք են այգեօք և պտղաբեր ծառովք, յորս դեղձ ազնիւ. հողն կարմիր և սեաւ տայ կարծիս երկաթահանից. գեղեցիկք են և վայրենի ծաղկամարգք։ Ի քաղաքաւանին՝ որ հնոյն Իսաւրիոյ սեփական երևի գոլ, են և ձեռագործ արուեստաւորք։ — Աւանն յիշի 'ի ԺԵ դարու, Pilarga իտալերէն գրութեամբ, 'ի Թարգմանութենէ յոյն պատմչի, և ասի յայնմ ժամանակի ունել բաժտուն։ Լերինք բազմակոհակք անջրպետեն աստանօր զվիճակս զայս 'ի գաւառէն Գարամանայ, և սփռեալ են 'ի նոսին արօտք Թուրքմանաց, ընդ ոքս և գնչուից ոմանց, հօրանօք այծից և երամակօք ուղտուց։

## Գ. ԷՐՄԷՆԷԿ

118. Զուգընթաց գետակացս յիշեցելոց, այսինքն 'ի Մ. Հս. Մ. ընդ Ն. Հր. Ն., ընդ մէջ Պալքէսէնի և բնիկ Կէօք-սուի՝ իջանէ գետակն Էրմէնէկ, 'ի բոլորաձև հովտի. յորոյ գլուխ կայ նշանակիչ կոչմամբ Պաչ-քէօյ, 'ի զուարճագեղ հովանաւոր վայրի. անտի սակաւուք 'ի խոնարհ՝ ընդ հարաւ՝ Լաուզա (Lauwsa), և կամուրջ առ նովիմբ, և գերեզմանք վիմափորք 'ի քարալերին և չիրիմք։ Սա է անշուշտ կոչեցեալն Լաւզատ 'ի մերայոց և 'ի Յունաց, Λαύζαδος, մի յեպիսկոպոսական Թեմից Իսաւրիոյ, կամ Սելեւկիոյ և Պամփիւլիոյ։ Ի տէրութեան Լեւոնի՝ մի յամուր և յանառիկ ամրոցաց Նորին էր, և տէր Նորին՝ Պարոն Խռսաւֆօռն (Քրիստափոր) յունազգի. ըստ բնութեան վայրուցն և մակադրական անուանն՝ «անառիկ Ծակն Լօզատի», յայտնի 'ի բնական անձաւի

1 Թուի թէ այս լերինք իցեն՝ զորս Տէվլս գրէ Ատրա 'ի Հս. Մ., և Պօզդաղ 'ի Հր. Մ.։

2 Տէվլս, 343-344։

3 Չիհաչէֆ և Քիբէրդ։

լինել, և յարուեստ ամրացեալ։ Զայսպիսի կարևոր տեղի՝ յանձն էառ Լևոն 'ի վերջին աւուրս իւր՝ ընդ միւսոյ ամուր տեղւոյ՝ Լուլուայ՝ տալ 'ի սուլտանն Իկոնիոնի, 'ի փրկանս գերելոց իշխանացն. այլ եթէ Լուլուա անկաւ դարձեալ 'ի ձեռս Հայոց, մարթի նոյնպէս կարծել և զԼաւզատ։ — Ընդ սմին տիրէր յիշեալ Խուսոֆոռն և Տիմիտուպօլսոյ, որ է Դոմետիուպօլիս, Δομιτιούπολις, քաղաք, այսպէս կոչեցեալ յանուն Դոմետեայ կայսեր, որ նստոյց անդ գաղթականս, և էր թեմ եպիսկոպոսական. հարկ է թէ և չիցէ հեռի 'ի սահմանացս. ոմանք յայժմու աշխարհագրացս համարին զայն լինել ըստ ուղղութեան հիւսիսոյ Անամօռի։ — Ի վայր ևս իջանելով ընդ գետեզրն՝ տեսանի Բիշլէր աւան, երբեմն նստոց վիճակապետի երեսուն և երկուց գիւղից Նէվահիի-Էրմին վիճակի, որ 'ի քարտէսս ոմանս գրի Նաւաճի գըչլա, ընդ մէջ Աղրուճ-դաղ մեկնակ լերին 'ի հիւսիսոյ և Շահենճուր կամ ճար լերին 'ի հարաւոյ։ — Խոնարհագոյն ևս նշանակին գեօղք Տաւնոսս, Տուճուէվալ կամ Տինուէպօլ [1], որ թուի վերյիշեալն Տիմիտուպօլ, ուր և կամուրջ արկեալ է 'ի վերայ գետակին. մերձ 'ի նոսին են և Խոփիռ գեօղ մեծ, և Կուրկարա։

Սակաւ ինչ հեռի 'ի խառնրդոց գետակին ընդ Կէօքսուի՝ յահեկէն, և առ փոքրիկ վտակաւ միով կայ գլխաւոր շէնն անուանատու գետոյն և վիճակին, միանգամայն և մեծագոյն և տիրական ամենայն բնակութեանց գաւառիս, քաղաքիկն Էրմէնէկ, 'ի 1250 Զ. բարձու, նիստ գայմագամի, այլ լոկ 3 կամ 4000 բնակչօք. բարեբոյս և այգեւէտ սահմանօք, թէպէտ և կարի սաստիկ և երկար ունի ձմեռն։ Ի մերձաձայնութենէն համարի Հայր մեր Ինճիճեան՝ յանուն ազգիս մերոյ կոչիլ տեղւոյս և յազգայնոցս լինել շինեալ. սակայն գրեաթէ աներկբայ է 'ի Գերմանիկուպօլիս քաղաքէ առնուլ զկոչումն. և գրի իսկ 'ի թեմս Germanicopolis, եպիսկոպոսանիստ, 'ի նահանգի Սելեւկիոյ կամ Իսաւրիոյ. հաւաստի է ևս յետ Բիւզանդացւոց լինել սորա ընդ իշխանութեամբ Ռուբինեանց, որք սակաւ ինչ այլայլութեամբ կոչէին Ժերմանիկ, և 'ի հոլովականն Ժերմանիկաճ. բերդատէր և իշխան նորին յելս ԺԲ դարու և 'ի սկզբան ԺԳին էր Հալկամ, ունելով ընդ ձեռամբ և զԼամոս և զԱնամուռ. Թերևս 'ի սմանէ կամ յայլոց պարոնայց շինեալ իցէ բերդն՝ յանձաւ քարայրի 'ի գագաթան լեռնակի, զորով փարի քաղաքն, և առ որ քարահատ ելս գործեալ է յերեսաց ձորեզերն՝ իբր ընդ 1300 ոտնաչափ. այլ 'ի սաստանութենէ երկրի քայքայեալ և խանգարեալ ճանապարհին՝ անմերձենալի միայ և բերդն, որոյ քարափոր սենեակք կամ ապաստանարանք երևին 'ի ստորուստ. 'ի բարձուէ ուստեք այլոյ քարայրի բղխէ աղբիւր, և իջեալ անցանէ ընդ քաղաքն։ Երևին 'ի սմին և մնացորդք ինչ հռոմէական շինուածոց, վաւերացուցանելով զանուն նորին։ Սահմանքն կարի գեղազուարճք են և բարգաւաճ բուսաբերութեամբ, յորոյ սեռից նշանակեսցուք զոմանս 'ի ստորև [2]։ — Ի սկզբան արշաւանաց Թաթարաց՝ փախուցեալ Թուրքմանաց ոմանց եկին 'ի սահմանս Էրմէնէկայ, և խնդրեցին, ըստ պատմելոյ Թուրք պատմչաց [3], 'ի տերանց նորին քրիստոնէից, թոյլ տալ գործել զերկիրն, խոստանալով տալ նոցա տասանորդս. այլ յետ սակաւ ամաց (1228) Ալայէտտին Քէյքուպատ սուլտան Իկոնիոնի արկ ձեռն և 'ի վերայ Ժեռմանկանն, և ետ միոյ 'ի սպայից իւրոց Քէմէր Իստին անուն. յետ իբր երեսուն ամաց զօրացեալ Գարամանին էառ զայն հնարութեամբ Ազէտտին Քէյքաուզ Բ սուլտանի, և կոչեցաւ Պէկ (իշխան) Էրմէնէկի, յայնմ ժամանակէ հետէ յայս ձեւ յեղափոխեալ անուանն։ Թէ անկան դարձեալ երբեմն տեղիդ 'ի ձեռս Հայոց, որպէս 'ի սկզբան ԺԴ դարու՝ յորում Օշին տէրն Կոռիկոսոյ ասի տիրեալ բոլորումն Իսաւրիոյ, ոչ գիտեմ։ Շէօնպոռն գերմանացի՝ որ յամի 1851 էանց ընդ Էրմէնէկ, և վասն տկարութեանն՝ ոչ կարաց քննել զբերդն, յոյժ գձուձ և աղքատ եգիտ զտեղին, զտունս հողաշէնս, փայտայարկս, տափարակս և անապակիս, զփողոցսն նեղս յոյժ և մթինս. մզկիթ և մինրայ մի միայն, կրպակք սակաւ, այլ շուկայ ոչ. 2700 բնակիչս միայն ասէ գոլ նմին, յորս և սակաւ Հայս, իսկ Յոյն՝ երեք ոգիք միայն. այլ ոմն Եւրոպացի յամի 1876՝ երիս Հայս և մի Յոյն ասէ։ Իսկ Տէվլիս յամի 1875 ընդ բնաւ 1200 տունս ասէ յԷրմէնէկ, բնակիչս 3 կամ 4000, որ ոչ զուգի թուոյ տանցն, եթէ արդարև աւելի քան զհազար տունք իցեն։ — Յարևելակողմն քաղաքին կայ գերեզմանատեղի հին խաչազրոշմ նշանօք. քանիւ չափ 'ի դամբանացն 'ի քարամէջս են, ունելով ոմանց զառաջեաւ նստարանս քարահատս, և խորշս ինչ, շատք վիմափորք են և անփակ. ոմանք բարձր ց'եօթն ոտնաչափ, այլք յոյժ ցածունք, և ոմանք յանմատչելի ափափայս և 'ի քիւս անձաւաց. կէսք կամարաձև գոգեալ են, այլք ամենևին անհարթ և անզարդ. երկու միայն յունական արձանագիրք յայտնեցան, այլ եղծեալք և անվերծանելիք։ Յե-

1 Թերևս նոյն զոր Տէվլիս Durndal գրէ, յէջ 358։

2 Erodium pelargoniflorum, * Ճայակտուց նման արագլակոցի.
Valeriana speluncaria, Մրուանտակ անձաւական.
Pterocephalus Caramanicus, * Վարսկատար Գարամանեան.
Inula Sarana, Լուսդեղ Սառանայ.
Achillea falcata, Հազարատերևեան մանգաղաձև.
Chamæmelum decipiens, Երիցուկ կամ Բաբունիճ խաբուսիկ.
Pyrethrum flabelliformum, Ակրկարհա հովանաձև.
Xeranthemum longepappum, * Զարենի երկայնածիլ.
Carlina longifolia, Կարլինա երկայնատերև.
Hieracium vulgata, Բզնածաղիկ հասարակ.
Campanula leucosiphon, Կանթեղնիճ սպիտակափող.
Trachelium myrtifolium, * Երկայնավզիկ մրտատերև.
Verbascum pycnostachyum, Եզնագի հասկախիտ.
— Isauricum, Եզն. Իսաւրացի.
Verbascum leuconervum, Եզն. սպիտակաջիլ.
— rubricaule, Եզն. կարմրատեղն.
Origanum leptacladum, Զուխրակ նրբակեղև.
— aucherianum, Եղեսպակ աւգերեան.
Marrubium micranthum, Մեղրածուծ փոքրածաղիկ.
Phlomis armeniaca, Փլոմիս հայկական.
Acantholimon Perontini, Կոծոծ Պերոնտինեան.
Euphorbia excelsa, Աբարբիոն բարձրաբերձ.
Poa diversifolia, Սեզ այլատերև.
— Peronini, Ս. Պերոնեան.
Bromus macrostachys, Խրոցակ կարճատեղն.
Juniperus excelsa, Գիհի բարձրաբերձ.
— drupacea, Գ. ձիթենաձև։

3 ԳԷՈՐԳ, Պատմութիւն Օսմանեանց։

ռեսս լերինն գործեալ են քարակտուր չրջադարձ աստիճանք 'ի վերելս՝ առ գերեզմանսն: — Ի կոհակս քարաժեռից երևին հետք մատրան միոյ, և դոյզն նշմար նկարուց 'ի նմին, քանզի այլն ամենայն եղծեալ է յայլազգեաց: — Ի հարաւոյ արևելից Երմէնէկայ՝ միջասահման ընդ նա և ընդ ծովեզրն, յեզր գեօղիկ մի 'ի լեռնամէջս, Aourouk գրեալ յեւրոպէացի ուղևորէ, թերևս Աւերակ. քանզի և է իսկ առ նմին 'ի կատար քարաբլրի՝ բերդ աւերակ, կանգնեալ որպէս թուի 'ի պահ զգուշութեան նրբուղի կածանի: Ի նոյն կողմանս առ Էրիկ գետակաւ նշանակի և տեղի մի Գափուլու անուն, որ նշանակէ դռնաւոր և 'ի ճահ գայ վերոյգրելոյդ:

116. Երկայնաձիգ չարք լերանց յարևմտից ձորագետոյն Երմէնէկայ՝ անջրպետեն ընդ նա և ընդ ձորակ Ագդարի կամ բնիկ Կէօք-սու գետոյ՝ մինչև 'ի խառնուրդս երկոցուն, գրեաթէ ուղղակի յարևմտից յարևելս խաղալով սորա: Գեօղք հնգետասանիւ չափ նշանակին, և չատք յաջմէ ջրոյն, որ է 'ի հարաւոյ, որպիսիք են Սարը Մուսա, Կէօրմէզ, Ջավուշ-քէօյ, Աճնաւա, Իզնէպօլ կամ Իյնէպօլ: Ի միջակողմանս ձորահովտին՝ յաջմէն ընդունի գետն զՊաչ-տէրէ (Ջորագլուխ) վտակ, առ որով 'ի ստորև նշանակի Նէտրէ-պօղազ գիւղ կամ հանգրուան, առ ստորոտով Շահէննար լերին, ուր և թուի կածան մի լինել. իսկ վերագոյն յանկեան երկուց աղբերաց վտակին՝ նշանակի Ֆէրիսքէ գիւղ, որ ծանօթանայ 'ի պատմութեան մերում՝ մի 'ի բացագոյն կալուածոց պարոնայց իշխեցողին Լեւոնի գոլ. զի 'ի հանդիսի թագադրութեան նորին դասակարգեալ է և Նիկէֆօռ իշխանն Վէտին և Վէռըսկու. երկրորդս այս տեղի է անշուշտ նշանակեալ գիւղդ, որոյ յայտ է թէ էր և դղեակ. ոչ գիտեմ թէ քննեալ իցէ ուրուք զտեղիս, զի և ոչ ճանապարհ նշանակի 'ի ձորահովտիս յայսմիկ. յորում՝ կամ 'ի մերձակայ վայրս՝ էր արդեօք և միւսն այն բերդատեղի, Վէտ կամ Վէտոն, զի միայն 'ի հոլովականն գտանի գրեալ առ արքունի պատմչին, և այն մի անգամ միայն:

Ի խառնրդոց անտի Կէօք-սուի ընդ Երմէնէկայ, 'ի բովանդակ ընթացս հզօրացեալ գետոյն Կալիւկադնոսի՝ յաջմէն որ է հարաւակողմն՝ սակաւք նշանակին օժանդակք և մանունք, սակաւագոյն և չէնք, և ոչ մի նշանաւոր. յայտ է թէ վասն ոչ քննութեան տեղեացն, զի և չեն դիւրամատոյցք, և ոչ հետք պղոտայի նշմարին 'ի քարտս, բայց միայն որ 'ի հարաւոյ՝ 'ի ծովեզերաց Անամուռի և Կելենտերայ տանին յԵրմէնէկ և 'ի Մուդ: Արդ առաջին նշանակեալ վտակ փոքր յայսմ կողման և սակաւուք 'ի բացէ՝ յելից յիչեալ գետակցացն, թուի կոչիլ Ջէյվէ, որպէս նշանակի գեօղն առ ակամբք նորին, եթէ չիցէ Ջիյնէ գրելի, զի այսպէս կոչէր վիճակ մի Իչէլի գաւառի. առ սովաւ են և վերոյիչեալ Իյնէպօլ, Աճնաւա և Կէօրմէզ գիւղ բարեչէն՝ 'ի վերայ արահետ պղոտային, 'ի միջի այգեաց և արքականեաց, Թուրք բնակչօք. առ սովաւ գվտակս այս ընդունի Ագդարի գետ, որ թէ և ծանծաղ է անդ, այլ ուժգին հոսի ընդ քարուտ և կոչկռուտ յատակ. կամուրջ անկոփ և կոփածոյ քարամբք՝ այլ ոչ հին՝ արկեալ է 'ի վերայն, և հանէ յահեակ կողմն՝ յԱխառ? գիւղ, զորով պատին քարաժայռք բարձրաբերձք:

Երկրորդ գետակ հզօրագոյն քան զառաջինն և յելից նորին՝ է վերոյիչեալն Էրիկ-տէրէ: — Երրորդ վտակ՝ որ 'ի հարաւոյ ընդ միջօրէիւ Մուդայ անկանի՝ ոչ նշանակի յանուանէ, այլ միայն գեօղքն, Հոնաս կամ Կոնուս և Հարբուշ կամ Օրբուշ: — Չորրորդ վտակ փոքրագոյն անկանի 'ի գետն հանդէպ բերանոյ Սարը-գավագի՝ որ յահեկէն՝ 'ի հիւսիսոյ. սմա ևս ոչ նշանակի անուն 'ի քարտս, այլ 'ի գլուխս ձորակին գիւղ մի Ուլուղիքա? անուն, և մերձ 'ի բերանն՝ Յօնկրուչ: — Հինգերորդ վտակ մի ևս յոյժ փոքր նշանակի խոնարհագոյն, առ Քէփէնէկ գիւղիւ: — Վեցերորդ վտակ յելից դորա, ունի առ ակամբքն գեօղ մի Կէօք-պէլի անուն: Ոչ գիտեմ որոյ վիճակի պատշաճիցին ձորակքս, Մուդայ եթէ Սելեւկիոյ, առ որ մերձագոյն քան զայլս է եօթներորդ վտակ՝ առ որով Վալանտիզ կամ Պալանտիզ գիւղն նախ յիշեալ, (յէջ 286): Ընդ մէջ երկոցուն յետնոց ձորակացս՝ ամբառնայ Քօզօձուզ լեառն յարևմտից Պալանտիզայ:



99. Պատճէն իսկական ձեռնագրի Յովհաննու Արքայեղբօր *.

* Նմանատիպ լուսագիր յիշատակարանս այս է յԱւետարանէ գրելոյ յԱրքայեղբայրն Յովհաննէ Բարունոյ, զորմէ ճառեցաք կանխագոյն՝ յէջ 146. և յետ այնորիկ յաջողեաց մեզ հանդիպել այնմ մատենի, կամ մատենին առ մեզ. յորմէ արտահանեալ պատճէնս այս հանդերձ այլովք, որպէս և որ յաւարտ 298 էջի յանդիման լինի: Վկայեսցեն տեսողք ճարտարութեան մատանց գրչին:

# Բ. ԼԱՐԱՆՏԱ = ԳԱՐԱՄԱՆ

117. Նշանաւոր քաղաք և վիճակ մի էր Լիկայոնիոյ աշխարհին՝ դրացի Իսաւրիոյ և 'ի կռան լերանց բարձանց Կիլիկիոյ, Լարանտա կոչեցեալ, սահմանորդ վիճակաց գաւառին Սելեւկիոյ՝ որ 'ի ձախակողմեան ձորահովտին Կալիւկադնոսի, 'ի հիւսիսոյ Զօմագ և Ալիպէկ լերանց, և յարեւմտից յառաջագոյն տեղագրեալ վիճակին Առակլեայ. 'ի հիւսիսոյ և յարեւմտից սահմանս իւր ունելով զայլս 'ի գաւառաց Լիկայոնիոյ, այսինքն Ղոնիոյ, և ըստ այժմու Օսմանեան տեսչութեան՝ պարագրելով վիճակս ինչ յատուկ Ղոնիա գաւառի Գարաման Նահանգի. յորոց մին կոչի Գարաման կամ Լարանտա, որ է բուն քաղաքն և անընդմէջ շրջավայրն, միւսն՝ զոյգ Գարաման և Պայպուրտ, որ է բացավայր շրջակայն: Զայսոսիկ համարիմք երբեմն նուաճեալս 'ի մերայոց Ռուբինեանց, կամ 'ի Մեծէն Լեւոնէ, որ է միջոց հարաւային և արեւելեան նշանակեալ սահմանաց Կալիւկադնեան գետահովտին և Իվրիս լերին Առակլեայ, 'ի հիւսիսոյ՝ զԳարատաղ և յարեւմտից՝ զՀաճիպաբա լերինս ունելով սահման. և այսոքիւք բնական իմն շրջափակօք երեւի երբեմն՝ թէ և սուղ ժամանակ՝ յօդեալ 'ի սեփական կալուածս հարստութեանն Հայոց. զի և դիպողագոյն և մերձագոյն սյս միայն էր վայր գրաւելոյ մերոցս, յորժամ յաջողեաց նոցա զհամօրէն Կիլիկիա հանդերձ լերամբք Տօրոսի ձեռամբ ածել: Տեսաք արդէն ուրեք և տեսցուք ևս, արտաքոյ բնիկն Կիլիկիոյ՝ ունել Հայոց բերդս և ամուր վայրս. և որպէս 'ի ծովակողմանէն յառաջեցին անդրագոյնս գոգջիր մինչև 'ի ծագս Պամփիւլիոյ, նոյնք և յառաջելով 'ի ցամաքէ՝ առաջին հանգոյց արտաքոյ երկոցուն Կիլիկեայց և Կապադովկեանն Տիանայ և Առակլեայ, գտին զայս Լարանտա, անուանի հնութեամբ, ամրութեամբ և բարեբեր նահանգաւ. հարկաւոր իմն հրապոյր աշխարհակալ ձեռին Լեւոնի, կամ նուաճել կամ վիճել 'ի վերայ սորին՝ ընդ սուլտանից Իկոնիոնի. որոյ 'ի վաղուց իսկ երկնելով զայս իղձ, կամ ոտն առ ոտն ընդարձակելոյ զերկիր իւր, կամ յանկարծոյն 'ի վերայ հասանելոյ և յափշտակելոյ, ոչ թագուցանէր զխորհուրդն, (գէթ առանց հաւատարմաց). և յետ պարգևելոյ զՍելեւկիա Ասպետաց Երուսաղեմի, յուսացուցանէր (յօգոստոսի 1210 ամի) առանձին խոստագրով՝ յաւելուլ 'ի նոյն և զԼարանտա, երբ և յաջողեսցի նմա կամ յաջորդաց իւրոց՝ Տերամբ՝ թափել զայն յայլադենիցն ձեռաց. և մինչև նուաճեալ՝ տայր նոցա իշխանութիւն մարտնչել կամ դաշինս հաշտութեան կռել ընդ Լարանտացիս[1]: Զարմանալի իմն թուի հաստատուն կամք նորա և դիտումն յայս գործ, զոր և վաւերացուցանէր ոսկի կնքովն և ձեռնարկութեամբք լատին եպիսկոպոսին Տարսոնի, ասպետաց գլխաւորաց և իւրոց աւագ պաշտօնէից, գրեալ ձեռամբ Բարդողիմեայ դիւանապետի արքունի մաքսատանն: Եթէ իսկապէս պարգևեաց նոցա երբեք զտեղին՝ ոչ է հաւաստի, բայց տիրել նորա ուր ուրեմն՝ գրեթէ աներկբայ է. զի Սիկարդ եպիսկոպոս Գրեմոնայ որ գրեթէ 'ի նմին ժամանակի եկեալ էր 'ի Հայս՝ ընդ երկոցուն ծիրանաւորաց նուիրակաց Քահանայապետին Հռովմայ, ասէ զԼարանտա (Լաւրենտա գրելով) անջրպետ երկոցուն պետութեանց՝ Հայոց և Իկոնիացւոց. Ad Laurendam civitatem quæ dividit Armeniam a Lycaonia. ոչ որոշելով թէ ում պատկանէր. բայց Անսբերտ ուղէկից Փրետրիկայ կայսեր վկայէ ընդ ձեռամբ Լեւոնի լինել երկրին՝ որ յայս կոյս քաղաքին. զի չուժեալ, ասէ, բանակին 'ի Լարանտայ՝ եկաք յաւան մի Հայոց, և տեսեալ յագարակս խաչս կանգնեալս՝ խնդացաք յոյժ[2]: Հաւաստեն պատմիչք մեր՝ զի 'ի վերջին ամս թագաւորութեանն ունէր Լեւոն և զԼարանտա. վասն որոյ 'ի ծերութեան նորին և 'ի հիւանդութեան՝ խնդրեաց սուլտանն վրէժ, «զի առեալ էր զԱռակլի և զԼառընտա», ասէ Սմբատ. և առ Կապանաւ գերելով զիշխանս Լեւոնի՝ ստիպեաց զնա փոխանակել ընդ նոսին զամուրս ինչ երկրի իւրոյ՝ որ 'ի սահմանս սուլտանութեանն, «և զԻսաւրիոյ գետն». ընդ որս ոչ յիշի Լարանտա, այլ հաւանական է թէ իմասցի Իսաւրիոյ գետովն, որ է ասել գետահովիտն. և թէպէտ Լարանտա արտաքոյ է նորին, այլ մարթի 'ի նմին իսկ համարիլ, այնու՝ զի ջուրն Լարանտայ ոչ 'ի ծով թափի և ոչ յայլ գետս, այլ յեղտիւրս կամ 'ի լիճս սահմանացն ճապաղի:

Ոչ յառասպելական հնութիւն ժամանէ սկիզբն Լա-

1 Concessimus et donavimus, quod si voluntate divina fuerit, ut auferatur Laranda, a manibus paganorum per nos vel per heredes nostris, vel per alios christianos venturos, ut sit hereditas domus Hospitalis, cum omnibus pertinentiis et dominiis suis que habet et habitura erit. Similiter concessimus eidem domui plenariam et liberam potestatem ad faciendum guerram et treguam cum Laranda, etc. — *Cartulaire*, 115.

2 Dum exercitus movisset castra a Laranda, ubi vires aliquantulus receperat, venimus ad unam villam Armeniorum, ibidem in campis Cruces a christiani fixas reperimus; propter quod ingens gaudium et exultatio corda nostra exhilaravit. — ANSBERTUS, *Hist. de Exped. Frider.*

րանտայ, ըստ Ցունաց, այլ տակաւին ճանաչի սովին
անուամբ, Λάρανδα, յաւուրց Մեծի Մակեդոնացւոյն,
և երևի առանձնակ իշխան ունել. առեալ 'ի Պերդիկ-
կայ աւերի, և վերականգնեալ՝ դասի ընդ գլխաւոր քա-
ղաքս Լիկայոնիոյ, այլ յախշտակի յելուզակաց Իսաւ-
րիոյ. ընծայէ ծննդեամբ զՆեստոր և զորդի նորա Պի-
սանդր բանաստեղծս. 'ի ծագել քրիստոնէութեան լի-
նի եպիսկոպոսանիստ Թեմ Իկոնիոյ Նահանգին: — Զր-
կան 'ի Լարանտա յունական կամ հռովմէական հնու-
թիւնք, այլ սակաւ ինչ սառակլինեանք. որպիսի են վա-
յելչաշէն մզկիթքն կլաւերք, մանաւանդ մին գեղե-
ցիկ ճարտարապետութեամբ, մանր արաբիկ քանդա-
կօք, կճեայ դրամբ և չորք զոյգ սեամբք, յորոց սմանք
թուին սիւնս բերեալ: Ունի և բերդ 'ի գագաթան
տափարակ և երկայնանիստ բլրի՝ յորում և քաղաքն
կառուցեալ է, նովին ոճով քառակուսի ձևով, որպէս
և շատք յաշտարակացն են, զորովք պատէ 'ի հեռուստ
երկրորդ պարիսպ, և 'ի միջոցին են իբր 100 տունք.
յորս գտանին ոչ սակաւ թուրք և արաբացի արձանա-
գիրք, բայց յայլոց չինուածոց հանեալք և ագուցեալք
յորմունսն, և շատք 'ի ստորոտն. այսու գուշակի եր-
կրորդ շինութիւն կամ նորոգութիւն պարսպացն: Կար-
ծի 2000 կամ նուազ ևս տանց լինել 'ի քաղաքիս, և
Հայոց ևս ընդ նոսին, որոց է և եկեղեցի մեծ և վա-
յելուչ. այլ ազնութիւն և զօրպէսն փափագելի է քնը-
նել: Զիհաչէֆ որ յամի 1848 էանց ընդ Լարանտա, ե-
գիտ անդ բազում Հայս զինեվաճառս՝ կլիսրացի գի-
նւոյ: Նման նմին ասէ և Տէվլիս՝ որ յամի 1875 եկն
այսր, և կարծեաց համարի 1000 տուն բնակչաց, յորս
100 տուն քրիստոնէից, և գտ 'ի նոցանէ բազում
եկս վաճառականս, Հայս և Ցոյնս՝ Կեսարացիս: Ցա-
րուարձանս քաղաքին իջեվան մի էր՝ Պատավան-խան
(Patawan) անուանեալ՝ ուրումն Հայոյ: — Զկք այլ
ինչ նշանաւոր 'ի քաղաքին, որ անշուք է, և փողոցքն
սալայատակք մթագնեալք 'ի պատշգամաց տանց կար-
կառելոց 'ի վերայ նոցուն. ունի և վաճառանոցս ոչ հա-
րուստս: Բայց պարտէզք բազում են 'ի ներքս, և ընդ-
արձակ յոյժ կարծեցուցանեն զքաղաքն. որպէս և ար-
տաքոյ բարեբեր անդաստանք: — Ցառաջագոյն աստ
նստէր կուսակալ նահանգին, փոխադրեալ արդ յԻկո-
նիոն. բայց տակաւին ողջոյն նահանգն՝ որ բովանդակէ
զհին աշխարհս Լիկայոնիոյ, Իսաւրիոյ, Պամփիւլիոյ և
Պիսիդիոյ՝ Գարաման կոչի ըստ այժմու անուան քա-
ղաքին, թէ և չէ մոռացեալ և Լարանտա կոչումն, և
այսպէս իսկ գրի 'ի պաշտօնական դիւանս Օսմանեանց:
Զպատկեր քաղաքիս տես հանդէպ 288 էջի, (Թիւ 98):

118. Ցանցեալ դարս և մինչև 'ի սկիզբն մերումս՝
յաւէտ ծովակողմն նահանգիս՝ Գարամանիա կոչիւր
յԵւրոպէացւոց, Caramania. այն ժամանակի գրիչք մեր
Խարաման անուանեն զտեղին և յաւէտ զտիրողն և
զտոհմն. զորոց, զի սահմանակցութեամբ և պատերազ-
մօք՝ ապա և նուաճմամբ երկրին՝ առընչութիւն եղև
ընդ Հայոցս Կիլիկիոյ, և զի բազում անգամ հարկ եղև
յիշել 'ի տեղագրութեանս, արժան համարիմ ծանու-
ցանել աստանօր զծագումն անուանն և զգործս ինչ:

Ցիշեցաք 'ի վեր անդր, զի յառնուլ Ալայէտտին սուլ-
տանի 'ի Հայոց զԿլոմէնէկ՝ ետ միոյ 'ի զօրավարաց իւ-
րոց (1228), և բնակեցոյց անդ Թուրքմանս ոմանս 'ի
պահպանութիւն երկրին. մի 'ի նոցունց էր Նուրէ-
Սուֆի ածղագործ, զոր՝ Համմէր հմուտ հեղինակ Օս-
մանեան պատմութեան, ոչ գիտեմ յորոց պատմչաց
տեղեկացեալ՝ ասէ ազգաւ Հայ լինել. սա բազում ան-
գամ երթայր 'ի Լարանտա վաճառել զածուղն, յորմէ
եղեն նմա ստացուածք բազում. որովք յօրացեալ եր-
կոցուն որդւոց նորա՝ անուանելոց Գարաման՝ (յորմէ
անուն տոհմին և երկրին), և Օնկաուզ կամ Պօնաուզ, 'ի
ժամանակի վրդովման տէրութեան սուլտանացն՝ յա-
րուցմամբ Թաթարաց, սկսան գունդ կազմել արկա-
յից և աւազակել, կողոպտել զսահմանսն և բռնանալ.
վասն որոյ լաւ վարկաւ սուլտանն, յամի 1257, տալ
նոցա զԿլոմէնէկ 'ի ժառանգութիւն և անուանել զա-
ւագն՝ Պէկ այնր գաւառի: Իբրև այսպէս փակեցաւ
նոցա դուռն արշաւանաց յերկիր սուլտանին, դարձան
յայս կողմն սահմանի իւրեանց, 'ի վնասս Հայոց լինել
ձեռնամուխ. զորոց՝ գրեա եթէ ժամանակակից Պատ-
միչ մեր արքունի, քաջ ծանօթ իրացն և անձանց՝ չակն-
արկէ բնաւ հայազգիս լինել, այլ ասէ. «Ցարեաւ ոմն
» 'ի խորանարնակ խամայէլացոցն ցեղէն, խարաման ա-
» նուն. և եկեալ յարեցան 'ի նա 'ի նոյն ցեղէն՝ բա-
» զումք. որ և ետ կոչել նոցա զինքն՝ սուլտան. և այն-
» չափ զօրացաւ նա՝ մինչև սուլտանն հռոմոց Ռուգ-
» նատինն՝ յահի եղեալ 'ի նմանէ՝ ոչ իշխէր ընդդիմա-
» խօսել նմա. և բազում տեղիս հանդերձ ամրօցք ընդ
» ձեռամբ իւրով բռնակալեաց. և բազում նեղութիւն
» էած կողմանն Սավրիոյ և Սելեւկիոյ՝ գերելով զնոսա.
» երկիցս անգամ կոտորեաց 'ի զօրաց արքային Հեթ-
» մոյ՝ զոր կացուցեալ էր անդ կողմնապահս. որ և անդ
» սպանաւ ամենագովելին Հալկամ, որ էր յոյն ազ-
» գաւ, զոր յառաջն յիշեցաք. (թուի թոռն համանուա-
» նըն որ առ Լևոնիւ): Եւ սկսաւ Խարամանն այն եղ-
» ջիւր ածել թագաւորեղբօրն՝ Սմբատայ. զի յայնմ գա-
» ւառին յորում Խարամանն բնակէր՝ բազում աշխա-
» տութեամբ և առատաձիր պարգևօք ղղեակ մի յան-
» օրինացն թափեաց, Մանիաւն անուն, որ յառաջա-
» գոյն քրիստոնէիցն էր եղեալ, (և որում տիրէր Հալ-
» կամն առաջին յելս ԺԲ դարու). և թագաւորեղբայրն
» և սպարապետն Հայոց Սմբատ երեք ամ կալաւ զնա
» 'ի մէջ այնքան բազմութեան անօրինացն: Եւ գողն
» Խարաման նեղէր զնա սաստկապէս, և յամենայնի
» վտանգ հասուցանէր Սմբատայ. որ և բազում ոսկիս
» և արծաթս անդ վատնեաց 'ի պէտս զինուորաց և
» ղղեկին այն կարեաց. և եկեալ Խարամանն 'ի վերայ
» նոյն բերդին, և պատեաց զնա շուրջանակի զամիսս ինն,
» և նեղէր սաստկապէս. և սկսաւ նոտի խօսիւք ամ-
» բաստանել, և պատուիրել առ արքայն Հայոց Հե-
» թում... (երգիծանօք գրգռելով. իսկ Հեթմոյ քաջա-
լերեալ 'ի խորագէտ հօրէն իւրմէ Կոստանդեայ և զօ-
րաժողով եղեալ), «գնաց 'ի Սելևկիա. և անդ հաւա-
» քեցան հեծեալն և հետևակն և բռնակիրքն. զի հա-
» զար քառ ցորենոյ տանէին 'ի ղղեակն ածել: Եւ իր-

» րև հասին 'ի սահմանս բերդին զօրքն քրիստոնէից և
» արքայն, անօրէնքն որ պաշարեալ էին զբերդն՝ յետս
» կոյս չոգան 'ի բերդէն. և իբրև եկն Թագաւորն զօ֊
» րօքն 'ի բերդն՝ ոչ եգիտ զանօրէնն Խարաման անդ.
» և հրամայեաց Թագաւորն Թափել զցորեանն 'ի բերդն,
» և եհան զպահապանսն որք պանդըխտացեալ էին, և
» նորս կացոյց 'ի տեղի նոցա: Եւ ապա դարձան և ընդ
» այլ ճանապարհ գային յաշխարհն իւրեանց անհոգու֊
» Թեամբ: Իսկ անօրէնն այն Խարաման եկեալ էր 'ի
» տեղի ինչ մացառուտ և դժնեայ քարակոյտ և անճուկ
» որպէս խողովակ, և անդ դարանամուտ եղեալ: Եւ յոր֊
» ժամ եկին 'ի տեղին յայն զօրքն քրիստոնէից, ան֊
» օրինացն ճիչ բարձեալ և նետաձգութեամբ խոցոտէին
» զհաւատացեալսն: Եւ եհաս աղաղակն առ արքայն.
» և արիագոյնքն Թողեալ զգունդս իւրեանց՝ հասին
» 'ի տեղի պատերազմին. և հարեալ զանօրէնսն՝ 'ի
» փախուստ դարձուցին. որ և խոցոտեցին նիզակաւ և
» նետիւ զԽարամանն. և դարձաւ ամօԹով, և յետ սա֊
» կաւուց սատակեցաւ 'ի խոցուածէն անօրէնն այն. և
» 'ի տեղի մարտին սպանաւ եղբայր անօրինին որ կոչէր
» Պօնսուզ, և փեսայ նորին [1]. և 'ի զօրացն արքային
» սպանաւ Պայլին Կոստանդին Սոմայցին. և զիշխա֊



100. Գարամանն ազնուական.



101. Տիկին Գարաման.

» նին Գրիգորի՝ որ էր տէր Մազոտ-խաչին՝ զաջոյ ձե֊
» ռինն նորա զբոյԹն՝ սրով հարեալ 'ի բաց ընկեցին. և
» սակաւք կորեան 'ի քրիստոնէիցն յայնմ աւուր: Իսկ
» եղբայրն Բակուրնայ և Կոստանդեայ Սմբատն՝ որ էր
» ազգաւ յոյն, տղայ գոլով հասակաւ, 'ի զարմէ հօրն
» արքային ՀեԹմոյ, յարձակեցաւ ընդ այլ քաջամար֊
» տիկսն, և յանօրինացն դիԹաւալ յերկիր ընկենոյր.
» զոր տեսեալ արքային և այլոց բազմաց՝ գովեցին զնա,
» և առաքեցին աւետաբերս առ Կոստանդին՝ հայրն ար֊
» քային. զոր իբրև լուաւ՝ 'ի մեծի ուրախուԹեան ե֊
» ղեալ, և առատաձիր պարգևօք և ընծայիւք դարձոյց
» զնա 'ի տուն իւր՝ առ եղբարսն և առ մայրն իւր տի֊
» կին Շահանդուխտ: Եւ արքայն եկն ուրախուԹեամբ
» յաշխարհ իւր և ցնծուԹեամբ. զի զայնպիսի գոռոզն
» սակաւ աշխատուԹեամբ յամօԹ արար »: — Սկիզբն
պաշարման բերդին Մանիոնի՝ (որոյ հարկ է յարևելեան
սահմանս Լարանտայ գոլ), գուշակի 'ի բանիցդ եղեալ
յամի 1259, կարևոր դէպք ազատուԹեան նորին և մար֊
տին և սպանման երկոցուն եղբարցն նահապետաց Գա֊
րաման տոհմի՝ յամի 1262: Այս դէպք զանխուլ միայն
և յարևելագիտաց, գուցէ և կամաւ լռեալ յարևե֊
լեայ պատմագրաց ժամանակին, վասն այսորիկ կըր֊

1 Դատարկ Թողեալ էր աստէն 'ի բնագրին, աներկբայապէս վասն առուգելոյ և ապա գրելոյ զանուն փեսայի Խարամանին:

կին կարեւոր համարեցաք յեռուլ 'ի կարգի բանիցս։

Ջկնի մահուան Գարամանին՝ սուլտանն Իկոնիոնի կալաւ զորդիս նորա և արգել 'ի դիպահոջ, այլ յետ սակաւուց արձակեցին զնոսա Թաթարք. և յաջորդեաց անդրանիկն որ կոչէր Շեմսէտտին Մոհամմէտ. և ըստ հայրենի աւազակաբարոյ բարուց՝ 'ի ժամանակի արշաւանաց Պիպարսայ սուլտանի Եգիպտոսի 'ի Կիլիկիա և 'ի Փոքր Ասիա, ժամ դիպող գտեալ՝ խարէութեամբ եմուտ տիրացաւ Իկոնիոնի, եհար և զգունդ մի զօրաց Եգիպտացւոյն. ապա լուեալ զգալուստ Թաթարաց՝ խոյս ետ 'ի լերինս իւր։ Ի վերջ կոյս ԺԳ դարու տէր երկրին Գարամանեայ Աւատ կոչի յԱպուլֆէտայ. և առ սովաւ Թուի ընդարձակեալ տէրութեան տոհմին, 'ի բառնալ սուլտանութեանն Իկոնիոնի, յամի 1294։ Ցեւս այնր դարու և 'ի սկիզբն ԺԴին Մոհամմէտ Պետրէտտին էր իշխողն։ Մի 'ի մերձաւոր յաջորդաց սորին յամի 1318 բազում հեծելօք ասպատակ սփռեաց 'ի սահմանս Տարսոնի. այլ Օշին Պայլ հասեալ 'ի վերայ վերջապահիցն՝ 'ի սահմանս Պոմպէուպօլսոյ՝ եհար և վանեաց։ Դարձեալ, առ նովաւ կամ առ յաջորդաւն, 'ի սկիզբն կոյս 1336 ամի, ըստ գրելոյ ժամանակակցի ուրուք, « Ազգն » որ կոչի Խարաման՝ մտեալ էր ընդ երկիրս Կիլիկեցւոյ,

102. Կին Սսորին Հայոց.

103. Ազնուական Սսորին Հայոց.

» և բազում վնաս գործեցին 'ի տեղիս տեղիս » ։ Այլ ըզ խառնելով զցաւալի յիշատակն՝ ընդ նախեղակ արշաւանաց Եգիպտացւոց, գրէ 'ի նմին ամի.

« Ցոյժ դառնաշունչ ժամանակի,
Եւ 'ի նուազել Հայոց ազգի,
Անդրէն ազգն Խոմայէլի
Ցարեան 'ի վերայ երկրին Կիլիկէի,
Եւ զամենն 'ի սուր մաշեցին սուսերի,
Եւ զայլն 'ի Մըսըր վարեցին գերի,
Եւ զկէսն 'ի յերկիրն Խարամնի։
Եւ Ցիսուս Քրիստոս տէրն ամենայնի
Արասցէ գերելոցըն բարի » ։

Ի վերջ կոյս ԺԴ դարու իշխողն էր Ալայէտտին, որոյ առեալ էր 'ի կնութիւն զՆէֆիզէ դուստր Սուլտան Մուրատայ Օսմանեանց, այլ սպանաւ 'ի յաջորդէ նորին Պայէզիտայ (1391) յառման Իկոնիոնի։ — Ի նահապետէ տոհմին Նուր-Սօֆեայ՝ տասն ազգք հաշուին պայազատեալք մի ըստ միոջէ՝ ցվերջ կոյս ԺԵ դարու, ցամն 1486, կամ 7, յորում Օսմանեանք բարձին զտոհմն և զտէրութիւն նոցին։ Ի միջին կէս այնր (ԺԵ) դարու առաւել ծանօթանային նոքա Եւրոպացւոց, մանաւանդ Վէնետկաց, և դաշնակցէին ընդ սոսա և ընդ Պարսից՝ ընդդէմ Օսմանեանց, վասն այնորիկ և կորեան 'ի սոցանէ ։ Պատկերահան մի սոցին (Վէնետկաց, Կեսար)

եղբայր գերահռչակ նկարչին Գիցիանոյ Վեչելլիոյ, յելս կոյս ԺԶ դարու 'ի հաւաքման տարազուց ազգաց՝ ընծայէ և զտարազ Գարամանեայցդ (յէջ 294), և զՀայոց կողմանցն, Ստորին Հայս անուանելով (յէջ 295) [1]։

Յամի 1432 Պերդրանտոն փռանկ էանց ընդ Լարանտա, և ետես զայն՝ բարեդիր ընդարձակ և վաճառաշահ. և էր, ասէ, անդ 'ի հնումն բերդ մի ամուր՝ որոյ երևէին դրունքն երկաթեայք և գեղեցիկք. այլ պարիսպքն կործանեալ էին։ Եգիտ 'ի քաղաքին երկուս Կիպրացիս՝ զի դեսպան գնային առ Գարամանն ժամանակին, (որ Թուրք անուանին Փիր Իպրահիմ), վասն կնքելոյ դաշն խաղաղութեան ընդ Նորապսակ Թագաւորին Կիպրոսի, և յարեցաւ 'ի նոսա՝ երթալ տեսանել զնա յԻկոնիոն։ Փիր Ահմէտ օգնութեամբ Օսմանեանց հալածեալ զեղբայր իւր Իպրահիմ՝ տիրապետեաց ամս ինչ (1467-9). ապա ապստամբեալ 'ի ձեռնտուաց իւրոց, և ոչ կարելով զդէմ ունել հակառակացն՝ փախուցեալ գնաց առ Ուզուն Հասան Թագաւոր Պարսից, և էառ զունդ հզօր առ 'ի վանել զՄուստաֆա զորդի Օսմանեան սուլտանին, զի սա հրամանաւ հօրն գրաւեալ էր զերկիր Գարամանի, և եհար վանեաց զնա հանդերձ պարսիկ բանակաւն։ Յայնժամ Ուզուն Հասան խնդրեաց 'ի Վենետկաց հրետս և սպայս, և օգնութիւն նաւական՝ վասն թափելոյ 'ի Թուրքաց զծովեզերս Կիլիկիոյ և հաստատելոյ յիշխանութեան իւրում զԳարամանն, զորդին Իպրահիմի, հանդերձ եղբարբն կոչեցելով Գասիմ պէկ։ Յաջողեաց Վենետկաց (յամս 1471-2) տիրել Սելևկիոյ, Սիկոյ և Կոռիկոսի, ևս և Լրմէնէկյոյ, և յանձնել զնոսին 'ի ձեռս երկոցուն եղբարցն. այլ իբրև 'ի պարտութիւն մատնեցան Պարսիկք յՕսմանեանց՝ 'ի կողմանս Երզնկայ, վատթարեցան և գործք սոցա. Փիր Ահմէտ յապաւինեալ զինչս իւր և զկանայս 'ի Մինան կոչեցեալ բերդ, որ է հաւանօրէն վերյիշեալն Մանիօն, եկն բանակեցաւ առընթեր Լարանտայ 'ի Հողմուտ բլուրն (Եէլլի-Թէփէ). այլ իբրև էառ Ահմէտ Կէտիկ փաշայ զԼրմէնէկ, ապաւինեցաւ Գարամանն յամուրն այն, 'ի գագաթան անմատոյց քարաժեռի, զոր չէր հնար այլազգ առնուլ՝ բայց հանելով հրետս յափափայ բարձունս մերձակայ քարալերանց. յոր և բազում ճգամբք յաջողեցան Օսմանեանք ելանել հաստատել և բաղխել զբերդն. պահապանն Եուսուֆ անուն՝ յետ հզօր և երկար դիմակալութեան՝ անձնատուր եղև. իսկ տէր երկրին Գարամանն Փիր Ահմէտ՝ անյոյս եղեալ այնուհետև, զահավէժ արար զանձն 'ի բարձանց մահարձանաց բերդին. երկիր տէրութեան նորին նուաճեալ յանձնեցաւ յանուանի տարաբաղդիկ արքայորդին Ճէմ։ Եղբայր Գարամանին Գասիմ-պէկ մեռաւ յամի 1483. սորա թոռն 'ի դստերէ՝ Մուհամմէտ պէկ Թօղրուտ օղլու՝ յետին պայազատ տոհմին ապստամբեալ՝ ջանայր վերականգնել զպետութիւնն, այլ պաշարեալ 'ի բազմախումբ զօրաց Օսմանեանց՝ ճողոպրեցաւ և փախեաւ 'ի կողմանս Հալպայ. և այսպէս զրաւ եղև Գարամանեան բռնակալութեան, որ տևեաց զամս երկերիւր և երեսուն (1257-1487), և հաստատեցաւ կուսակալութիւն (Պէկլէր պէկի) նովին անուամբ Գարամանի, յոր և ցարդ կոչի Էյալէթի Գարաման։

119. Ի նախակարգեալ բանից յիշատակիս՝ ցուցաւ ոչ երկարժամանակեայ լինել իշխանութեան մերազգեացս 'ի կողմանքս, վասն որոյ և չէ մեզ փոյթ մանր քննութեան նոցին, այն զի և չէ իսկ քաջ հետազօտեալ յաւելորաց. որպէս ահա ոչ բնաւ նշմարի 'ի քարտէս Մանիօնն այն բերդ յիշատակաց, զոր յետ Սըմբատայ եղբայր նորա Օշին ժառանգեալ ունէր յամի 1265. այլ 'ի հարևանցի իմն յիշեցուք զտեղիս ինչ, թերևս յօգուտ այլոց հետամտութեան։ — Գլխաւոր չէ՞ն յետ քաղաքին Լարանտայ՝ 'ի վիճակի նորին է Գասապա աւան՝ Կաֆրիատ? մականուանեալ, 10 կամ 12 մղոնաւ բացակայ յարևմտից կողմանէ, ընդ մէջ Գարատաղ և Հաճիպապա լերանց, 'ի 1060 Ձ. բարձու, յորոյ սահմանս ետես Չիհաչէֆ երամս ագլորից և վայրի սագուց յածեալս աներկիւղ յորսորդաց. աւանն պարսպապատ է, այլ խանգարեալ, փոխանակ աշտարակաց արմկունս ինչ ցցուեալս ունելով հաւասարաչափ հեռաւորութեամբ։ — Փարսախաւ յելից հարաւոյ աւանին՝ յանջրդի սահմանի է Իլիսրա գիւղ, յորում երևին մնացորդք սեանց և կոփածոյ քարանց վարկպարազի զետեղեալք, յորոց կարծեցաւ լինել Իլիստրա, 'Ιλίστρα, քաղաք եպիսկոպոսանիստ 'ի նահանգին Իկոնիոնի։ — Սակաւուք հեռի աստի 'ի կողմն քաղաքին Լարանտայ է Մասսարա-չիֆտլիկ գեղակ, և ընդ մէջ երկոցուն սոցա աւերակք հին շինուածոց։ — Ի հարաւակողմն քաղաքին հուն մի է ցամաքեալ հեղեղատի և վտակ Գուրու-տէրէ կոչեցեալ (Ցամաքաձոր). և զատ յայլոց մանունց՝ Պօյալը կամ Պօյալար գեօղ 'ի 1433 Ձ. բարձու, 'ի ստորոտս անջրպետաց ձորահովտի նախագրեալ գետոյն Պուզագչեայ։ —

[1] Հեղինակն՝ Ստորին Հայս կոչէ զկողմանս հարաւոյ Փոքր և Մեծ Հայոց, և ընդ Գարամանեանս դասելով զպատկերեալքս՝ յայտ առնէ և նոցուն բնակակիցս կամ մերձաւորս. և այսպէս ստորագրէ.

« ԿԻՆ ՍՏՈՐԻՆ ՀԱՅՈՑ. Կանայք Ստորին Հայոց՝ անհեթեթ » (կամ տարօրինակ) իմն կրեն գլխանոց, բազմագունեան քօղովք. » զգենուն պատմուճան գեղեցկակերտ 'ի ներքոյ, և 'ի վերայն կըրկնոց սպիտակ բամբակեայ։ Դարձեալ, ունին և կտաւ մի գործած » նման քառակուսւոյ կրօնաւորաց, երկայնագոյն 'ի թիկանց քան » յառաջոյ կողմանէ, ընդ որ կարեն տեսանել և ոչ տեսանիլ »։

« ԱԶՆՈՒԱԿԱՆ ՍՏՈՐԻՆ ՀԱՅՈՑ. Այս ազգ արանց կրէ փակեղն » ստուար, երկնագոյն, երիզապատ։ Երկայնեն զգիսակս հերաց և » զմօրուս։ Զգեստ է նոցա կնգուղ կրօնաւորաց կամ նման նմին, » այլ կերպասեայ կամ ասուեղէն կամ բամբակեայ, և յաճախ՝ » գունաւոր։ Արկանեն զպարանոցաւ ղենջակ իմն մետաքսեայ բա» րակաման, կարմիր և սպիտակ կամ այլ գունագոյն երիզօք, որոյ » միջին մասն 'ի վերայ լանջացն հանգչիցի, և տուունքն զթիկամբքն » անկանիցին։ Կօշիկս ագանին երկաթագամս հանգոյնս Թուրքաց »։

Donna dell' Armenia Inferiore. — Queste donne dell' Armenia Inferiore usano una acconciatura di testa stravagante, con veli di colori diversi. Portano sotto una sottana di bel lavoro, e sopra un rocchetto bianco di bambagina. Poi hanno un panno simile ad una patientia fratesca lavorato, ma alquanto più lungo di dietro che davanti, quale portano per vedere et non esser vedute.

Uomo nobile dell' Armenia Inferiore. — Questa sorte d' huomini porta un dulipano, c' ha del grave assai, et è di color celeste et listato. Portano la zazzera de' capelli lunga, et parimente la barba. Hanno per veste una cocolla da monaco, o ad essa simile, ma però di seta et ancora di lana o di bambagia, di color per il più. Al collo ha una tovaglietta di seta finissima, listata di bianco et di rosso et d'altri colori; il mezzo della quale si riposa sopra il petto, et gli estremi pendono dietro alle spalle. Calzano scarpe ferrate, come i Turchi. — Cesare Vecellio, *Habiti antichi et moderni, etc.*

ի հարաւային արեւելեան կողմն Լարանտայ նշանաւորն գեօղք Ֆիզանտոան, Հասրին, Մեյտան, Լայէ, և այլն, և Կէօսէն կամ Գուռէն առ համանուն վտակաւ 'ի 1576 Զ. բարձու, յարեւմտից բարձրագոյն լերանց ։ Իսկ արեւելեան կողմն քաղաքին որ կարի ընդարձակ է՝ մինչև 'ի Գաւառ Կիլիկիոյ յայնմ կողմանէ, և մինչև 'ի սահմանս Ատանայոյ և Աք-կէօլ լճի ընդ հիւսիս, և որ առաւել հետաքննական էր մեզ վասն դրակցութեան և խառնութեան ընդ հաղուածս մերազգեաց, (որ և հաւանորէն Մանիոնն բերդ և այլք), բառ ոչ բաղդի՝ գտաւորի երեխ 'ի տեղագրաց աշխարհիս, թերևս վասն դժուարութեան արեւմտեան սարերաց Պուլղար և Տեմիրկէյէկ լերանց՝ անհամարձակելի մնացեալ ուղեգնացից, և կամ վասն նախանախուտ վայրացն․ զի ջուրք որք 'ի Թեկեանց լերանցս հոսին ընդ արեւմուտս՝ ոչ խոնին և ոչ յանգին 'ի գետ կամ 'ի ծով, այլ կամ սուզանին ընդ երկրաւ, կամ հոսեն յԱք-կէօլ լիճ՝ 'ի մնոյ Ատանայոյ, և 'ի ձմերանի մերացուցանեն զզաչսն այնոցն․ վասն այնորիկ և ջրաւէր հաւք երամովքն նարակին անդ ։ — Ի հիւսիսակողմն անապատացեալ ընդարձակութեանն՝ 'ի հարաւոյ Աք-կէօլ լճի և յարեւմտից Իսպրիզ լերին գրեթէ հաւասար հեռի յԱտանայոյ, 'ի Լարանտայ և 'ի Թեկեանց Պուլղար լերանց՝ նշանաւորն գեօղն Տիւլէ, 'ի խառոյն կճապար լեռնայրյոց, առ վտակաւ միով որ խաղայ ընդ հիւսիս 'ի



104. Դուռն տաճարի յԻսաւրա քաղաքի.

լիճն կոյս․ վկայեցան լինել 'ի սահմանս նորին աւերակք եկեղեցւոյ, սեանց և ընդարձակ քարայրք․ յայտանէ՝ և 'ի չափոյ հեռաւորութեանն յԻկոնիոնէ և 'ի Լիւստրայ, և վասն Տերբիա Δελβεία կոչմանն 'ի միջին դարս, հաւասար լինել Դերբէ քաղաք, երբեմն աւագանիստն Անտիպատրոսի տրաւմ՝ զոր ասացն Ալիւնդրոս բարեկամ Հռովմայեցւոց, առ Կիկերոնիւ․ և ուր եկն Առաքեալն հեթանոսաց՝ առաջնորդութեամբ Պօղոս, հանդերձ Բառնաբաւ, ըստ Գրոց, «և չուէ՝ զգաւառաւն, և անդ աւե-
» տարանէին ... (և) աւետարանեալ 'ի քաղաքին յայն-
» միկ և աշակերտեալ զբազումս՝ դարձան 'ի Լիւստրա
» և յԻկոնիոն, և յԱնտիոքիա»․ յայս լեռին անուն կոչէր յայնժամ զաւառն Դերբէի․ առաւ զարձ ատարեալ Առաքելոյն գնաց 'ի բուն 'ի մեծն Անտիոք, և անդուստ վերստին առեալ ընդ իւր զՇիղայ՝ փոխանակ Բառնաբայ,
«Շրջէր 'ի կողմանս Ասորւոց և Կիլիկեցւոց, և հաստա-
» տէր զեկեղեցիսն։ Եկն նհաս (միւսանգամ) 'ի Դերբէ
» և 'ի Լիւստրա», ուր զՏիմոթէոս աշակերտեաց։ Այնքանեաց սրբազնաշուք ձայնի լսող վայրք՝ այդ 'ի գերեզմանական խեն լռութեան զանխլացեալ մնան․ բայց յառաջին դարս Դերբէ մի էր յերկոտասան թեմից նահանգին Իկոնիոյ, որպէս և Լիւստրա և Իսաւրա և Լարանտա, և Իսաւրա կամ Իսաւրոպօլիս մայրաքաղաքն Իսաւրիոյ, որոյ չքեղ աւերակք կան բացագոյն յարեւմտից Իկոնիոյ՝ ոչ կարի հեռի 'ի ձորահովտէն Պուզագչեայ, այլ յայնկոյս լերանցս, յոր կարծեմ չեղեն Հայք

ձեռնհաս, վասն որոյ և զանց առնեմ 'ի ստորագրելոյ. Թէպէտ և ասի վասն առաջնոց Ռուբինեանց ոմանց և նորին իսկ Լեւոնի Մեծի՝ տիրել և կողմանց Իսաւրիոյ, այլ ոչ գիտեմ ցոր վայր: Ցանկացողաց տեսլեան քաղաքին՝ ահա նշմարդ (յէջ 297), որ է մուտք դրան տաճարի միոյ: — Ի Տէվլէ յառաջ քան զսով 1873-4 ամաց՝ էին 700 տունք, յետ այնր մնացին 200, զի չատք ցրուեցան յայլեայլ կողմանս, և կէսք մեռան, որպէս և արջառք և ոչխարք նոցին իբրև 50,000: Ի բնակիչսն Թուրք լինել և Հայոց. քանզի յազանել անդ Տէվլիսայ (10 յունիսի, 1875), պատանի մի Հայ առաջարկէր տանել զնա 'ի տես աւերակ քաղաքի միոյ. բայց ուղևորին Թողեալ զայն՝ զի միայն պարիսպք մնացեալ ասէին, չոգաւ 'ի խնդիր մնացորդաց Գերբէի՝ որ իբր 10 մղոնաւ յարևմտից հիւսիսոյ Տէվլէի կայ առ Մերիիք գիւղիւ, 'ի գլուխ և 'ի կողս կըճեայ բլեր, ուր հօծեալ են դերբուկք անտաշ կրամած քարանց. երևին հիմունք ընդարձակ պարսպաց, բայց ոչ Թատր և ասպարէզ, և ոչ սիւնք և քանդակք և հոյակապ շիրիմք, այլ վիմափոր գերեզմանք ինչ. գտաւ և շիրիմ մի մեծ և գեղեցիկ ընդ հողով, ուր և կայ ցարդ, պէսպէս անդրեօք և քանդակօք, համակ 'ի սպիտակ պաղպաջուն կճոյ, 11′ ընդ երկայնն, 6′ լայն, բարձրութիւնն անստոյգ, զի կիսաթաղ կայ 'ի գետնի. գտան 'ի նմին կմախք և սափորք 1 $^1/_2$ ոտնաչափ բարձունք, այլ ոչ յայտնեցաւ պատուական ինչ, և ոչ արձանագիր:

Ցարևելակողմն Լարանտայ ընդ մէջ Նորա և Տէվլէի կայ Իպրալա գիւղ Թուրքաբնակ. յորմէ և անդր մինչև 'ի ստորոտս Տիւմպէլէկ և Պուլղար լերանց՝ խոպան է գետինն արջնաթոյր, քարուտ, անփոյտ և անբնակ. ուր աւրօտք են Եիւրիւկ Թուրքմանաց. գլխաւոր կայան կամ հանգրուան նոցին է 'ի միջավայրս անապատին, յանուանեալ տեղւոջն Գարա-գուչու (Սեաւ ջրհոր). մշակեն նոքա սակաւ ինչ ցորեան և գարի, զի և սակաւաջուր է երկիրն. գուն ուրեք գտանին ծործորք և աղբերք. բայց և յառապարս անդ ծիծաղին ծաղկունք: Առ միով յաղբերացն դադարեալ Տէվլիսայ՝ յերթալն 'ի լերինս արևելից, եհարց զծեր ոմն եթէ ընդէ՞ր ոչ տնկեն ծառս ինչ հովանաւորս 'ի հանգիստ իւրեանց. և նա ասէ, Եթէ կամեցեալ էր Աստուծոյ լինել աստէն ծառոց՝ միթէ ո՞չ բուսուցանէր: — Ի ժամանակին յայնմիկ (1875) Թէքէրլէկ Մուստաֆա ոմն էր գլխաւոր տոհմին այնորիկ Եիւրիւկաց. սա ասէր յայն կողմանս գտանել բուսոյ միոյ նման Թէյի, զոր և վարէին յըմպելի, և խոստացաւ՝ այլ ոչ եցոյց զտեղին: Կանայք նոցին առանձինն բնակէին ընդ այծենի վրանօք. և էին նոցա բազմահօյլ հօտք ոչխարաց և այծեաց: Հանգրուանդ յիշատակեալ՝ 'ի հարաւոյ կայ Իպրիզ լերին և 'ի հիւսիսոյ Միդայի լերին. են և աշպառաժ բլուրք յերեսս անապատին, յորս աճեն գիհիք. ընդ այս անապատ տանի ճանապարհ յանցս Տիւմպէլէկ (Թմբուկ) լերին, և հանէ 'ի Լեռնային Կիլիկիա:



105. Յաւետարանի գրելոյ 'ի Յովհաննէ Արքայեղբօրէ *.

* Տես զոր ծանուցաք յէջ 291: — Կազմողդ Առաքել Թուի ծաղկող գոլ յարուեստին, զի նորա է կազմած և աւետարան մի գրեալ հրամանաւ Կոստանդնի կաթողիկոսի, վերջացեալ ամաւ յառաջ քան զայս (1262). և 'ի յիշատակարանին (զոր հրատարակեաց Գեր. հեղինակ Թորոս Աղբար գրոց), ծանուցանէ կազմողն և գրող զերդբայր մի գիր. « Զմեղաւք դատապարտեալ կազմող սորա՝ զԱռաքել » հնազանդեսց եւ զծնողսն իմ և զհարազատն իմ զՊաւղոս սար» կաւագ, և զուսուցիչն իմ զՍարգիս քահանայ, զհանգուցեալսն 'ի » Քրիստոս, աղաչեմ յիշել 'ի Տէր: Ի Թուա. ՉԺԱ »: — Ցուցանեն տառքդ՝ զի ոչ էր անհմուտ և վայելուչ գրչութեան:

Դ

# ԾՈՎԱՅԻՆ ԿԻԼԻԿԻԱ



բրեւ կէս մասն հարաւային արեւելեան ափանց փոքուն Ասիոյ, որ և արեւելեան հիւսիսային մասն ծովեզերաց համատարած ծովուն Միջերկրականի, ուղղագիծ իբր 260 մղոն, և ըստ խոտորմանց ափանցն ընդ ծով և ընդ ցամաք՝ աւելի քան զ'350, վիճակեցաւ երբեմն տէրութեան Հայոց. զորս՝ սկզբնական բաղդ թուէր իմն սահմանափակս առնելով 'ի մէջերկրայս, ոչ հեռիս՝ այլ անհուպս կարգել մշտաշարժ ալեացն, որք չարժնագոյնս և զառընթեր բնակեալսն գործեն։ Ցարեւելից՝ 'ի Հռոսոս հրուանդանէ՝ որ զԿիլիկիա զատուցանէ յԱսորւոց երկրէ, մինչև 'ի Սրբազանն հրուանդան կամ 'ի Քելիտոնեան կղզի (Շելիտան ատասը) յարեւմուտս, կամ որ նոյն է ասել, 'ի Հայոց Ծոցոյն (Իսսոս) ցԾոցն Ատալիոյ, ձգի այս կամարագեղ եզր ցամաքի. մէջն՝ որ է հարաւակողմն Քարայնոյն Կիլիկիոյ՝ կարկառեալ կամ յառաջացեալ է անդրագոյն 'ի ծով. և սա երկուստեք յառաջեալ 'ի մէջ երկրին՝ գործէ երկուս ընդարձակ ծոցս, զՊամփիւլիոյ կամ զԱտալիոյ յարեւմուտս, զՏարսոնին յարեւելս. զի այսպէս արժան համարիմ կոչել զմեծ գոգ ծովուն՝ որ ընդ մէջ է երկոցուն հրուանդանացն՝ Սարպեդոնի (Լիսան-էլ-Գահպէ) և Մեգարսոսի (Գարադաշ). քանզի և յերկարագոյն ժամանակս միայն սա գրեաթէ անանջատ ընդ իշխանութեամբ Հայոց, զամս երկերիւր. իսկ բուն անուանեալն Ծոց Հայոց կամ Իսսոսի՝ որ և Աղեքսանդրեդդայ, կոչելի է յաւէտ գոգ մի մեծ՝ յանուն Այասայ մեծի նաւահանգստի Հայոց։

Սակայն կանխեմ յիշեցուցանել աստէն 'ի սկզբանս, զի զայսքան ընդարձակ ծովեզերս՝ ոչ բացարձակ մասն Կիլիկիոյ կամ իշխանութեան մերոց տերանց Կիլիկեցւոց համարիմ եղեալ միշտ կամ ընդ երկար ժամանակս, այլ միայն կիսով չափ՝ արեւելեանն մասամբ. իսկ զարեւմըտեայն, քանզի սակաւ ժամանակ կալան տեարք Սիսուանայ, վասն որոյ և ոչ յերկարեմ 'ի տեղագրութեան վայրացն, չունելով իսկ ուստեք ծանուցեալ 'ի նոսին հետս կամ մնացուածս ազգային յիշատակաց. այլ և ոչ զանց առնեմ իսպառ, քանզի՝ որպէս տեսցի յառաջիկայ տեղագրիս, յանդրագոյն՝ այսինքն յարեւմտագոյն իսկ կողմանս երկրին՝ գտանին ոմանք 'ի բերդորէից՝ (լաւ ևս ասել ծովաբերդից)՝ եղելոց ընդ տէրութեամբ լիճ իշխանաց Լեւոնի Մեծի, և ոմանք նաև ցվերջին ամս թագաւորութեան Ա. Հեթմոյ, զուցէ և առ որդւով նորա Լեւոնիւ։ Նա իցէ՞ անմասն 'ի սփոփանաց՝ ձեմ առնուլ առ անգամ մի ընդ երկայնութիւն բազմատեսիլ միջասահմանի անդ ծովուն և ցամաքի, ուր երբեմն հարուստ չահաստանք և վարուն նաւահանգիստք էին մերոցս այնոցիկ միջակ հարանց, Այաս, Տարսոն, Կոռիկոս, Կոռակեսիոն (Ալայա), Սադալիա, և Բորդոյ-Բալի. նկատել մօք զնախնեացն անցելոց պերճաբար գնացս 'ի նոսին, և գյեղյեղուկ դրօշմս բաղդի՝ հանդոյն կնքոյ գարշապարաց նոցին յաւազի անդ, կամ հետախաղաղս, կամ դոյզն ինչ յեռեալ նշմար հայկական՝ 'ի վաղնջական պաղպաջուն նշխարս Հելլենաց և հելլենացելոց։

Հռչակաւոր պատմագիրն և աշխարհագիրն Վենետկաց Մարինոս Սանուտոս Դորչելլոյ, գլուխ մի բանի կարգեալ է 'ի գիրս իւր այսու խորագրաւ. «Ծովային »վիճակք՝ որոց տիրէ Թագաւորն Հայոց, 'ի սահմանաց »Նուաճելոց սուլտանին (Եգիպտոսի), և 'ի կողմանց »Թուրքիոյ՝ որ ըստ հիւսիսոյ.» և սկսեալ յարևելեան ափանց Ծոցոյն Հայոց՝ կարգէ զնաւակայս, հանդերձ մղոնաչափութեամբ, զոր համառօտեալ 'ի ցուցակիս՝ զմնացիրն յաւելից 'ի ստորև *։

Մ ՂՈՆԱՉԱՓՔ ԾՈՎԵԶԵՐԱՑ ՀԱՅՈՑ ԿԻԼԻԿԵՑՒՈՑ.

| Ըստ Մարինոյ Սանուտոյ | | | Ըստ այժմնայց |
|---|---|---|---|
| Ի Գարամելայ | | | |
| ց' Գայպոյ լեառն, մղոնք . . . | 20 | 35 | Այաս |
| Այաս . . . . . . . . . | 15 | | |
| Բորդոյ Բալի . . . . . . | 10 | 20 | 17 |
| Գետաբերան Ջահանայ . . . | 10 | | |
| Մալոյ . . . . . . . . | 10 | | |
| Գետաբերան Սարոսի . . . | 20 | 50 | 37 |
| Գետաբերան Կիւդնոսի . . . | 20 | | |
| Կոռիկոս . . . . . . . | 40 | 40 | 42 |
| Գետաբերան Կալիկադնոսի . | 10 | 20 | 19 |
| Պալաչիա սար (Լիսան էլ-դահպէ) | 10 | | |
| Բորդոյ Բինոյ . . . . . . | 15 | | |
| Գավալիերի նաւակայք . . . | 10 | 40 | 23 |
| Պրովենցալ նաւահանգիստ . . | 15 | | |
| Սիկ կամ Սիկկին . . . . . | *60? | | |
| Սդալիմուռ. . . . . . . | 20 | 110 | 22 1/2 |
| Կելենտրիս . . . . . . . | 30 | | |
| Սալմոդ . . . . . . . . | 25 | | |
| Անտիոքիա (Կրագեան) . . . | 20 | 90 | 80 |
| Լոմբարտաց բերդ . . . . | 25 | | |
| Ալայա (Գանտելոր) . . . . | 10 | | |
| Ս. փոկաս ժայռ . . . . . | 30 | | |
| Ատալիա Հին (Սիդէ) . . . . | 40 | 110 | 66 1/2 |
| Ատալիա Նոր . . . . . . | *40 | | |
| Հռենոաթիա . . . . . . | 15 | | |
| Կիւպրինաս . . . . . . | 10 | 35 | 32 1/2 |
| Գենուացւոց նաւահանգիստ . . | 10 | | |
| Քիպակոյ . . . . . . . | 8 | | |
| Կամբրուքսա (Կամբուսա) . . | 6 | 24 | 13 |
| Քելիտոնեան սար . . . . . | 10 | | |
| | 574 | | |
| Հանեալ զմիջոցն ցԱյաս . . . . . | 35 | | |
| յԱյասայ ցՔելիտոն լինին . . . . | 529 | | 352 1/2 |

Ցաւելաւ 'ի հանդիպոյ չափուց Սանուտոյի և նորն՝ ստուգեալ 'ի փռանկ և յԱնգղիացի նաւագիտաց, ծովային մղոնք[1]. յայտ է թէ հեռաւորութիւն տեղեացն ըստ գծի նաւագնացութեան առեալ է, և ոչ ըստ ցամաքագնացութեան։ Առ 'ի բովանդակել զծովեզերս Հայոց՝ ցՀռոսիկեան սար (Ռաս-Խանձիր), պիտին այլ ևս վաթսուն մղոնք ծովայինք, որով լինի միահամուռ 412 մղոնաչափ ծայրէ 'ի ծայր՝ ըստ նաւագնացութեան, սուղ աւելի կամ պակաս։ — Զուգաթիւ է այսմիկ և մղոնաչափութիւն ծովեզերեայց փլորենտիացւոյն Յովհաննու յՈւծծանոյ, յամի 1460, 'ի Սատալիոյ մինչև 'ի սարն Ռաս-Խանձիր. որ և ըստ մերումս տեղագրութեան յարևմտից յարևելս խաղայ, նշանակելով զտեղիս և զչափս այսոսիկ **.

| | |
|---|---|
| Ի Սատալիոյ ցԳանտելոր, մղոնք . . . . . | 60 |
| Բերդ Լոմպարտաց և Անտիոքիա . . . . . | 20 |
| Սդալիմենէ . . . . . . . . . . . | 20 |
| Սիկ . . . . . . . . . . . . | 20 |
| Պապատուլի . . . . . . . . . . | 60 |
| Կամալէդ (Գավալիեր ?) . . . . . . | 20 |
| Լենա տելլա Պալուսսա . . . . . . | 30 |
| Ֆեսսա (?) . . . . . . . . . . | 8 |
| Պանտեասա . . . . . . . . . . | 10 |
| Կալդ (Կիւդնոս ?) . . . . . . . | 10 |
| Սալէս (Սարոս ?) . . . . . . . | 50 |
| Մալլոյ . . . . . . . . . . . | 10 |
| փոս Պիոզայ (Ջահան ?) . . . . . . | 15 |
| Պլաս ? և Սահման Հայոց . . . . . | 10 |
| Այաս . . . . . . . . . . . | 10 |
| Կարբոյ լեառն . . . . . . . . | 15 |
| Կարամելլա . . . . . . . . . | 10 |
| Աղեքսանդրեակ . . . . . . . . | 15 |
| Պոնել նաւահանգիստ . . . . . . | 10 |
| Ռաս-Խանձիր . . . . . . . . . | 10 |
| | 413 |

Ծոցըս այս միջոց է (յԱտալիոյ ցՌաս-Խանձիր) զոր կայ մեզ տեղագրել, և զոր նախ յերիս զատուցանեմք բաժինս, յԱրևմտեան, յԱրևելեան և 'ի Միջին Ծովափունս։ Առաջինն՝ յԱտալիոյ ձգեսցի մինչև 'ի Սելևկիա կամ 'ի Սարպեդոնեան Սար, և զատուսցի յերկուս մասունս, 'ի Պամփիւլիա և յԱշխարհ Սեր Ատանայ. երկրորդն և Միջին կոչեսցի Ծովափունք Տարսոնեան Ծոցոյ, ունելով զմիջոց երկոցուն հրուանդանացն՝ զՍարպեդոնին և զՄեգարսոսի. զատուսցի և այն յերկուս գաւառս, 'ի Վարշագ և 'ի յատուկ Տարսոնեան Ծոց։ Երրորդն՝ որ է Արևելեան բաժին Ծովային Կիլիկիոյ՝ սեփականեսցի մեզ անուամբ Ոլորտք Հայոց Ծոցոյ, իւր ուրոյն վիճակօք կամ գաւառօք։ Պատճառ այսպիսեաց անուանակոչութեանց՝ ծանուսցի 'ի սկիզբն տեղագրութեան իւրաքանչիւր մասանց։

1 Չափ ծովային կամ հասարակ աշխարհագրական մղոնի՝ է 1/60 միոյ աստիճանի լայնութեան երկրի (1852 Չ.). իսկ Սանուտոյի մղոնն է 1/75 (1481 Չ.), որ է առել հնգիւր մասամբ փոքր քան զծովայինն կամ զաշխարհագրական. վասն որոյ 529 մղոնք նորին վերածին 'ի 430 մղոն աշխարհագրական։ Սակայն և այնպէս ոչ զուգեսցին չափք նորին ընդ նորոցս ծովագիտաց. հարկ է թէ գուցէ սխալ յօրինակի գրոց Վենետկեցւոյն. և զայս ինքն իսկ տայ հաւաստել. քանզի ուր կարի երկար է նշանակեալն 'ի նմանէ միջոց, (ուր և աստեղանիշս եդաք), ինքն իսկ անդ երկբայօրէն գրէ՝ թէ ասին (dicuntur) այսքան մղոնք լինել, մինչ յայլ ամենայն տեղիս՝ հաստատութեամբ դնէ այսքան կամ այնքան մղոնս։ Սանուտոյ ոչ ճշգրտէ զարևմտեան ծայր ծովափանց Հայոց, և ձգէ անդր քան զԱտալիա և զՔելիտոն։

* *Maritimæ contratæ cui Rex Armeniæ dominatur, a confinibus subiectis Soldano, ac etiam partibus Turchiæ a latere Septentrionis.*

A *Caramela* usque ad montem *Caybo*, per magistrum, viginti millia computantur. — A monte Caybo ad *Laiacium*, per occidentem versus garbinum navigando, spatium quindecim milium computatur. — A Laiacio ad *Portum Pallorum*, navigando inter garbinum et occidentem, millia sunt decem. Laiacium portum habet et siccam unam ante se, quæ scolium dici potest, ad quam quidem siccam prodenses figuntur, et ancoræ versus terram firmam. — A dicto autem Portu Pallorum, ad faucem fluminis *Malmistre*, millia sunt decem, navigando per garbinum. Et notandum est quod puncta dicti portus Pallorum debet per dimidium milliaris honorari: et si ad præfatum portum quis accesserit, unum inveniet ibi pallum, quod super puncta dicti portus Pallorum fixum manet continue; et caveat sibi a pallo portus proxime antedicto. — A prædicta autem fauce fluminis Malmistræ usque ad *Malo* millia sunt decem, versus magistrum per occidentem navigando. Malo portum habet, qui coram se duas habet parvunculas insulas, quæ sunt distantes quarta milliaris a terra firma, et prodenses tenentur ad insulam; ancoræ vero versus terram firmam figuntur, ubi duorum passuum usque ad tres aquarum profunditas reperitur. — A Malo autem, quod est quoddam castrum, usque ad faucem *fluminis Adene*, navigando per occidentem versus magistrum, millia sunt viginti. — A fauce fluminis antedicti, usque ad faucem *fluminis Tarsi*, millia sunt viginti, navigando per occidentem versus ventum qui dicitur magister. — A fauce vero Tarsis usque ad *Curcum* versus, garbinum versus per occidentem quadraginta millia esse dicuntur: coram autem dicto Curco, quædam insula invenitur. — A Curco autem usque ad punctam faucis *fluminis Saleffi*, millia sunt decem, cum garbino versus occidentem navigando. — A flumine vero de Saleffo usque ad *Lenam de Labagaxa*, millia sunt decem, a greco et a garbino: dicta autem puncta de Labagaxa est valde plana, et in fundo sunt arenæ, et parvam habet aquam in mari bene per unum milliare. — A Lena vero de Labagaxa usque ad *Portum Pinum*, millia sunt quindecim, a syroco et a magistro: prædictus portus, bonum habet spacium, et bonum fundum retinet. — A portu vero Pini usque ad portum *Cavalerium*, decem millia sunt, navigando per quartam ponentis versus garbinum. Dictus vero portus, bonum habet statium et bonum retinet fundum. — A portu autem Cavalerio usque ad portum *Prodensalium*, quindecim millia computantur, a levante similiter et ponente: dictus scolius habet statium intus, atque magnum fundum retinet: et in dicto scolio sunt quædam muralia, unde illic prope est statium. — A scolio vero Prodensalium usque *Sequin* millia sexaginta esse dicuntur, per quartam ponentis versus garbinum navigando: in dicto vero Sequin, possunt anchoræ figi, et inde coopertam recipit a ponente: similiter habet unum flumen quod labitur in mari. — A Sequin usque ad *Stallimurus*, millia sunt viginti, a greco et garbino: in dicto vero Stallimurio, possunt ancoræ figi, et similiter coopertum habet a ponente. — A Stallimuris usque ad *Calandro* triginta millia computantur, a syroco quoque et a magistro; et bonum portum retinet. — A Calandro autem usque ad *Salmode*, viginti quinque sunt millia, navigando per quartam magistri versus ponentem. — A Salmode vero usque ad *Anthiocetam*, viginti millia esse dicuntur, navigando inter ponentem et magistrum. — Ab Anthioceta usque ad *Castrum Lombardum* viginti quinque millia computantur, per quartam ponentis versus magistrum navigando. — A Castello autem Lombardo usque ad *Candelorum*, decem millia sunt, a levante siquidem et ponente. Prædictus Candelorus civitas est portum habens, et facit sibi operimentum usque garbinum. — A Candeloro ad *Scolium Sancti Fochæ* triginta millia computantur, navigando inter ponentem et magistrum. — A dicto autem scolio Sancti Fochæ usque ad *Sataliam* Senem, millia sunt quadraginta, navigando per quartam magistri versus ponentem. — A Satalia vero vetere usque ad *Sataliam Novam*, quadraginta millia esse dicuntur, a ponente et a levante. Item prædicta Satalia Nova, est magna civitas, habens scolium ante se bene per octo milliaria foras in mari: qui quidem scolius proprie nominatur *Agiopendi:* et ibi bonum statium reperitur. — A Satalia quidem Nova usque *Renathiam*, milliaria sunt quindecim. Dicta Satalia bonum et securum ex parte terræ habet portum, in quem dilabitur quoddam flumen. — A Renathia usque *Cyprianas*, milliaria sunt decem. Prædicta Renathia bonum habet portum in insula, ex parte maris et terræ securum: habetque aquam fluminis copiose. — A Cyprianis ad *Portum Januensem*, milliaria sunt decem: portum securum habet, dum a Turchis sibi caveant illi de porto ex parte marina et terrestri, qui portus in Plagia sufficienter fluminis habet aquam. — A porto Januensi usque *Chipascum*, octo millia computantur: bonum portum et flumen obtinet; tamen sibi caveant a gente ex parte terræ. — A Chipasco usque *Cambruxam* millia sunt sex: bonum habet paravegium et affluenter aquam: a quo porto quadam insula distat circa tria milliaria infra mare. — A Cambrux ad *Scolia de Childoniis* milliaria sunt decem, sed parua; habet enim paravegium, et ubi ancoræ infiguntur: videtur tamen statium timorosum ex parte maris, quamvis a gente ex parte terræ possit esse securum: etc. etc. — Marin Sanuto, *Secreta Fidelium*. II, IV, 26.

** Da *Satalias* a *Candelloro* a 60 miglia per scilocco verso levante: — dal Candelloro al *Castello Lombart* ad *Antiocheta* a 20 miglia per levante verso greco: — da Antiocheta ad *Stalimene* a 20 miglia per levante verso greco: — da Stalimene a *Sequin* a 20 miglia per greco verso levante: — da Sequin a *Papa-dominin* a 60 miglia per scilocco verso levante: — da Papa-dominin a *Camaulet* a 20 miglia per libeccio verso scilocco: — da Camaulet alla *Lena della Bagussa* a 30 miglia per quella via; e dalla Lena della Bagussa verso ponente 10 miglia è lo *Scoglio del Provinciale:* — dalla Lena della Bagussa alla *Fessa* a 8 miglia per greco verso tramontana: — dalla Fessa a *Pantessa* a 10 miglia per greco: — da Pantessa a *Calt* a 10 miglia per greco: — da Calt a *Sales* a 30 miglia per greco verso levante: — da Sales a *Mallo* a 10 miglia per levante: — da Mallo alla *Fossa di Biosa* a 15 miglia per levante: — dalla Fossa di Biosa alla bocca del *Porto di Plas ed Erminia*, a 10 miglia per greco. Lo Porto di Plas è grande porto e largo, e a una montagna alta e grande per tramontana, ch' a nome d' *Acqua;* e di verso maestro un' altra montagna ritonda: — dal Porto di Plas a Lajasso a 10 miglia intra greco e levante: — da monte *Garbo* che d' è di levante a Lajasso 15 miglia sino a Lajasso a ponente e a levante. — Da monte Garbo a *Caramella* a 10 miglia per scilocco: — da Caramella ad *Alessandretta* a 15 miglia intra mezzogiorno e libeccio: — da Alessandretta al *Porto Bonel* a 10 miglia intra mezzogiorno e libeccio: — da Porto Bonel a *Rasatangir* a 10 miglia intra mezzogiorno e libeccio. — Da Rasatangir alla *Fossa del Soldin* a 7 miglia intra mezzogiorno e libeccio, etc. — Giovanni da Antonio da Uzzano, *Compasso a mostrare a navicare dall' uno Stretto all' altro;* presso Pagnini, *Della Decima... della Mercatura*, IV, 234.



106. Դրամ Տարսոնի մայրաքաղաքի առ Կոմմոդոս կայսերաւ. (տես յէջ 265)։ — Գլուխք Սաբինեայ, Ադրիանու, Անտոնինոսի, Մարկ-Աւրելեայ, Լ. Վերոսի, Կոմմոդոսի, Փաւստինեայ կրտսերոյ եւ Կրիսպինեայ։

# Ա. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԾՈՎԱՓՈՒՆՔ

## Ա. ՊԱՄՓԻՒԼԻԱ

**121.** *Թէպէտ և անձուկ մասն երկրի՝ այլ մի յաշխարհաց փոքուն Ասիոյ համարեալ էր Պամփիւլիա 'ի հընումն, յարևելից կալով Լիկիոյ, 'ի հարաւոյ Պիսիդիոյ, և յարևմտից Իսաւրիոյ և Քարայնոյն Կիլիկիոյ, և 'ի հիւսիսոյ գեղեցիկ ծովածոցի միոյ՝ որ յայնժամ յիւր անուն և արդ կոչի* Ծոց Ատալիոյ. *և եղերբք նորին բովանդակի համօրէն երկիրն, որ հազիւ թէ քսան մղոն ունիցի ուղղակի ընդ երկայնն, և սակաւ մղոնս խորութեան ընդ ցամաքն։ Ի դէպ է համարել թէ էին Պամփիւլիոյ յատուկ իմն չնորհք 'ի սկզբանն, առ 'ի գրիլ այնքան փոքու սահմանաւ՝ ընդ առանձնակ աշխարհս. և այսպէս իսկ համարին ոմանք զՊամփիւլիացիս, իբրու տեղածինս՝ ըստ առասպելաց, սերեալս 'ի Պամփիւլիայ* (Παμφυλία) *դըստերէ դիւցազանցն Հռակլայ և Մանտոյ. այլ յումէ և իցէ սերունդ նոցին՝ յայտ է թէ ոչ է չատ աճեցեալ, կամ թէ 'ի մերձակայ տոհմս և յաւէտ 'ի Կիլիկեցիս խառնեալ, յետոյ և 'ի Յոյնս։ Զփաւորութիւն երկրին այսու ևս հաւաստի, զի առ Քսերքսեսիւ յաշխարհախումբ նաւատորմղին՝ մինչ Կիլիկիա հարիւր նաւս մատուցանէր և Լիկիա յիսուն, Պամփիւլիա երեսուն միայն, թէ և բովանդակն ծովեզերեայ էր, և լերինս ունէր քաջ փայտաւէտս. մինչև ոմանց համարել պիտակաբար՝ թէ վասն այն անուանեցաւ, իբր համակ-անտառ կամ փայտ* (Πας φύλλον)*։ — Նշանական բարք կամ սովորութիւն ժողովրդեանն երևին մարմնամարզ ագոնական մրցանք, որպէս է գուշակել 'ի պատկերաց դրամոց նոցին։ — Զըպատմին ինչ դէպք նշանաւորք 'ի հնումն հանդիպեալ 'ի փոքու աշխարհիս. այլ չնորհաւոր է վաղ ծաւալումն քրիստոնէութեան 'ի նմա, և վաղագոյն ևս Հրէիցն սփռել մինչև այսր. որպէս է ուսանել 'ի սկզբան պատմութեան Գործոց Առաքելոց. զի յաւուր մեծաքանչ Գալստեան Ս. Հոգւոյն՝ ընդ այլս յիշին և որք «'ի Փռիւ- » գիա և 'ի Պամփիւլիա[1]». առ որս յետ սակաւուց եկն Պօղոս աշակերտօքն՝ քարոզել «'ի Պերգէ Պամփիլեայ», որ էրն գլխաւոր քաղաք՝ յետ Ատալիոյ։ Ըստ եկեղեցական վիճակագրութեան՝ Պամփիւլիա արքեպիսկոպոսական նահանգ կարգեցաւ, ունելով սեփական թեմս ութ, յորս յաւելան երեք ևս գաւառք՝ երեսունևվեց վիճակօք, ընդ բնաւ քառասուննեւութ։*

Ի ԺԱ *դարու երևի սկիզբն արևելեայց բնակութեան 'ի Պամփիւլիա, վարելով կամ ընկճելով զՅոյնս. Միխայէլ Պատմիչ վասն Միքայէլի Ստրատիոտիկ կայսեր* (1056-7) *ասէ, առ ահի Արաբացւոց կամ Թուրքաց գաղթեցուցեալ զՅոյնս 'ի կղզիս, և յաւելու. «Եկեալ Թուր- » քայն և գտեալ* զԾըլկիըն Ատալիոյ, *և* զՈւճն, *և ըղ- »* Կօնն *(Լիկայոնիա) անմարդաբնակ, դադարեցին 'ի » տեղւոջն». այսպէս յանուն գլխաւոր քաղաքին կոչելով զաշխարհն, որ արդ յՕսմանեանց կոչի* Թէքէէ, *և մի է յեօթանց գաւառաց նահանգին Գարամանի, վիճակըս ունելով մետասան, զայսոսիկ.*

1. Ատալիա *և* Իստանօզ.
2. Մորթանա *կամ* Քիւրտ Աշիրէթի.
3. Իկտիր *և* Գարտիճ-եայլա.
4. Ֆէնէքէ.
5. Քաշ.
6. Գալգանըլը.
7. Էլմալը.
8. Կէրմէկլի *կամ* Պուճաք.
— Միլի գարա-հաւուզ.
9. Գզըլ-գայա.
10. Սէրիք *և* Գարահիսար Թէքեէ.
— Պէշ գօնաք.
11. Աշիրէթի Քէնիզ։

*Միահամուռ 'ի սոսին երկերիւր վաթսուն գեօղք էին և* 100,000 *բնակիչք յամի* 1842, *ըստ ծանօթութեան Անգղիացւոց ոմանց ուղևորաց*[2]։

Ի նմին ԺԱ *դարու Թուրք և մերազգեացս ցրիւ հասեալ և բնակեալ 'ի կողմանքս. քանզի 'ի ժամանել առաջնոց* Խաչակրաց, *ընդ Կիլիկիոյ և Կապադովկիոյ և այլոց ոմանց աշխարհաց՝ և զՊամփիւլիա թուէ Լամբրունեցին՝ լի լինել Հայոց ազգաւս. իսկ ըստ իշխանութեան՝ ուսուցանեն մեզ արձանն Անազարբայ դղեկին և այլ յիշատակարանք, տիրել Մեծին Լեւոնի ծովեզերացս՝ մինչեւ յԱտալիա։ Ոչ յիշի որոշակի ոչ առումն և ոչ կորուստ Ատալիոյ 'ի Հայոց. 'ի պարիսպս քաղաքին գտանի ագուցեալ վէմ առիւծաքանդակ նման լեւոնեան առիւծուց, այլ անթագ. բայց գտանին անդ և այլ նշանք քրիստոնէականք և լատին տառք։ Գիտեմք և զԼուդվիկ Է Թագաւոր Փռանկաց՝ յամի* 1148 *զկայ առեալ յԱտալիա, մինչ տակաւին 'ի Յունաց ձեռս էր քաղաքն, և անտի նաւեալ դառնալ յերկիր իւր. այլ անստոյգ մնայ ինձ*

1 Գործք Առաքելոց, ԺԳ. 13։

2 Րիտտէր, ԺԹ. 652։

խնդիր Նուաճման Ատալիոյ 'ի Հայոց, մինչև հնար լինի մանրախուզիւ քննել զամենայն ձեռնտուած յիշատակարանաց քաղաքին, զորմէ սակաւ ինչ տալ չիցէ անճառ. զի եթէ և ոչ 'ի Ներքս' գէթ 'ի պարիսպս նորին եհաս զէն կամ ձեռն Լևոնի, որպէս և 'ի Կեսարիա։ Բայց զի և յաջորդք Լևոնի իշխէին կողմանցս, մարթ է արդեօք 'ի վկայութիւն առնուլ զբան արևմտեայ պատմչաց, եթէ հինգ մեծ յաղթութիւնս արարեալ իցէ Հեթմոյ (Բ?), և զառաջինն 'ի Պամփիլիա։

122. Ի բուն 'ի գոգ մեծի ծոցոյն, այն է յարևմտեան հիւսիսային անկեանն, իբր 70' 'ի վերոյ ասեալն կառուցեալ կայ քաղաքն Ատալիա կամ Ատտալիա, Ἀττάλεια, զոր և Թուրքք ցարդ նոյնպէս կոչեն, իսկ խաչակրի Նաւորդք միջին դարուց գաղղիական յօդ բառին յարակցելով՝ կոչէին Սադալիա. Satalia, այլ և Satalion. Թուրքք և Արաբք՝ Անթալիէ, انطاليه ։ Եւ կոչեցաւ այսպէս յանուն շինողին, որ է Ատտալոս Բ Եղբայրասէրն (Փիլադելփոս) թագաւոր Պերգամոյ, 'ի կէս Բ դարու նախ քան զթուական փրկչին. ոչ է ուրեմն հին քաղաք, այլ կալաւ զառաջնութիւն՝ զոր ցայնժամ ունէր Ոլբիա, որոյ աւերակք մնան 'ի հիւսիսոյ Ատալիոյ. յետ սակաւ ամաց (132 Ն. Ք.) մարզ եղեալ Հռովմայեցւոց՝ կարգեցաւ մայր քաղաքաց Պամփիլիոյ։ Այսր ապաստանեցաւ առ վայր մի Պոմպէոս յետ պարտութեանն 'ի Փարսաղիա, հանդերձ կնաւն (48 Ն. Ք.)։ Պատուեցաւ Ատալիա ըստ վերայցելոյն՝ 'ի մեծ առաքելոյն Պօղոսէ, որ Բառնաբաւ



107. Ատալիա քաղաք.

հանդերձ եկն և աստի նաւեաց յԱնտիոք. և 'ի հաստատել քրիստոնէութեան՝ եղև սա արքեպիսկոպոսական աթոռ սակաւուց վիճակաց. յետոյ ուրեմն Ալէքս կայսր ամրացոյց զայն 'ի մեծապարսպական աշտարակաւն, կարգեալ ընդ նմին զԹեմս կղզեաց։ Սակայն առ նովիմբ իսկ՝ Սելչուկեան սուլտանն Գըլճ-Ասլան էառ զԱտալիա յամի 1207, և առ ժամանակ մի եղև մի 'ի բանդարկեալ շինից կողմանցս, մինչև խաղաղ տիրեցին Թուրքք Իկոնիոնի. և առ սոքօք տարածեաց մերս Լևոն զբազուկ իշխանութեան իւրոյ «մինչև յԱտալիա»։ Հեղինակ վարուց Հենրիկոսի Բ Թագաւորի Անգղիոյ՝ յաղէգրութեան Փիլիպպոսի Թագաւորի Փռանկաց, ցուցանէ սակաւ 'ի ձեռս Յունաց լինել զԱտալիա Նորն, (Նորոգեալ 'ի Մանուէլէ կայսերէ), 'ի սկզբան իշխանութեան մերոյս Լևոնի։ Ի բառնել սուլտանութեան Իկոնիոնի՝ ինքնագլուխ իշխանք ամիրք և ապա Գորամանք ժառանգեցին զգաւառն և զքաղաքն. յորոց՝ 'ի գալ այսր Իպն-Պաղուդայ Հռչակաւոր ուղևորի և աշխարհագրի 'ի կէս ԺԴ դարու, իշխողն էր Խըդր ասլան որդի Եունուս բէկի. մեծ և յոյժ գեղեցիկ եգիտ նա զքաղաքն, պարսպապատ, բաժանեալ 'ի չորս թաղս, իւրաքանչիւր առանձին պարսպօք. և էր մին առ Նաւահանգստին՝ բնակեալ յոյն և այլ ազգաց քրիստոնէից, յորս է թէ վաճառականաց. միւս՝ էր Յունաց, երրորդն Հրէից, չորրորդ և գլխաւոր՝ Թուրքմա-

Նաց. պարտէզք ընդարձակք և ջուր առատ՝ զուարճալի եւս գործէին զտեղին. յազգի պտղոց՝ ընտիր յոյժ էր ծիրանն, զոր և չորացուցեալ առաքէին յԵգիպտոս, և կոչէին զայն քամար-էտտին: — Ըստ սակաւուց՝ յամի 1361՝ Պետրոս Ա. Թագաւոր Կիպրոսի տիրեալ զամ մի Ատա-




108. Յատակագիծ Ատալիոյ.

լիոյ կողոպտեաց, ըստ վկայութեան վիպասանի իւրոյ (Մաշոյի) [1]: — Յառաջին կէս ԺԵ դարու Օսմանեանք հանին զԱտալիա յիշխանութենէ Գարամանի. առ որ դարձուցանել ճգնեցան քրիստոնեայք՝ առաջնորդութեամբք Վենետկաց, յամի 1471, ութսունևհինգ նաւուք եկեալ, և հրետիւք խորտակեալ զշղթայ նաւահանգըստին՝ տիրացան, աւարեցին և աւերեցին զարուարձանս քաղաքին, և զարտաքին պարիսպ բերդին, այլ ոչ կարացին նուաճել զմիջնաբերդն, և դարձան, տանելով զշղթայն 'ի նուէր եկեղեցւոյ Ս. Պետրոսի 'ի Հռովմ: Ի սկիզբն ԺԶ դարու՝ Խուրշուտ որդի Բ Պայէզիտ սուլտանի՝ էր կողմնակալ Ատալիոյ: — Մի 'ի շահաստան նաւահանգստից Կիլիկիոյ էր Ատալիա յ'ԺԲ-ԺԵ դարս, ուր բերէին յարևելից ազգս ազգս պիտանի նիւթոց և հանէին ընդ ծով. յիշին առանձինն վաճառք սուսեղինաց, պուքերամ կտաւուց, ժենտալ նուրբ կտաւի, եղէգն շաքարի, գազի խէժ, և այլն: Բեկոլոդգի՝ խնամով իմն ճառէ զշահաստան նաւահանգստէս, յիշելով ըզպէսպէս ազխամազխս վաճառուցն, յորս երևելիք էին կտաւք և դիպակք 'ի Փռանկաց և 'ի Լոմբարտաց բերեալք, և արմտիք. (չափ սոցին էր մոդն = 20 քիլակ) [2]: Նոյն յիշէ այլուր և զպաղլեղ բերեալ 'ի կողմանց Քիւթահիոյ՝ 4000 կենդինար 'ի տարւոջ, ընդ 14 աւուրց ճանապարհ [3]: — Ի սկզբանէ մերոյ դարուս ցկէս նորին՝ բազում գիտնական ուղևորք եւրոպացիք յայց եկին Ատալիոյ, և գրեաթէ ամենեքին գովեն զգեղեցիկ դիրան, զբերդն ամուր և կրկնապարիսպ բազում աշտարակօք, մէն յիսուն քայլաչափ հեռի 'ի միւսոյ. զփողոցսն՝ յանգեալս 'ի նաւահանգիստն. զմեծ և զգեղեցիկ դուռն մի քաղաքին, առ որով չորք մեծամեծ սիւնք ամբառնան և այլք մանունք կորնթեան ոճով. միւս ևս դուռն՝ յորում առիւծաքանդակ և այլ նշանք ասպետականք, և



109. Վահանքանդակք 'ի պարիսպս Ատալիոյ.

առ երի քառակուսի աշտարակ մեծ: Երևին ցարդ աստի և անտի նաւահանգստին՝ խարիսխք քարեղէն կարկառուցն՝ յորոց ձգէին շղթայք փականաց նորին: Պարիսպք ծովակողմանն ամբարձեալք 'ի քարաժեռի 400 Զ. բարձու՝ ահաւորահայեացք երևին 'ի վերայ մկանանց ալեացն: Ի շինուածս նշանաւոր է մզկիթ մի բոլորակմբէթ հնգեքումբ միհրայիւք, և թուի հին եկեղեցի. են և այլ տասն մզկիթք, վաճառանոցք և այլ կառևոր հասարակաց տեղիք՝ ըստ բաւականի բնակչացն, որ համարին յամանց մինչև 25,000. և որպէս հինգ դարուք յառաջ՝ նոյնպէս և այժմ զատուցեալ են թաղք Յունաց և Հրէից: Յամենեսին 'ի սոսա և յայլ կողմանս քաղաքին երևին վէմք և քանդակք հնագոյն շինուածոց, հանդերձ արձանագրութեամբք ինչ հռոմէական ժամանակաց: Յոյնք համարին 3000 ոգիք, ունին եօթն եկեղեցիս և առաջնորդ արքեպիսկոպոս: Բարգաւաճ է տուրևառն 'ի ձեռին սոցա, որք յաւէտ տանին աստի երիվարս և փայտ բազում յԵգիպտոս. անուանի էր 'ի վաճառականսն ճոխութեամբ և ճարտարութեամբ՝ Հաճի Իսդաւրոս՝ գործակալ հռչակաւորն Մէհէմմէտ Ալի փոխարքայի Եգիպտոսի:

Փոքրիկ է այլ անքոյթ նաւահանգիստ Ատալիոյ. ամարանի կարեն նաւք և բացագոյն զկայ առնուլ, զի խոր է խորշն աւելի քան զ'30 Զ., և սակաւուք հեռի 'ի Հր. Եւ. 'ի 40 Զ. բարձրաւանդակի կայ լապտեր հաստատալոյս, ճառագայթելով ց'ութ մղոն. բայց 'ի դարնան ևեթ յաճախեն եկք նաւաց 'ի Հռոդոսէ, 'ի Զմիւռնիոյ և այլ ուստեք: — Ի սկզբան տարւոյս (1884) մրրիկ ուժգին յուզեալ զնաւահանգիստն՝ խորտակեաց և խո-

1 « Il s'en ala, lui et sa gent,
» Tant qu'il vint devant Satalie;
» Une cité qu'est en Turquie,
» Grande et puissant et ferme et forte...
» Mais il n'i ot ne mur ne porte,
» Ne gent qui la peust deffendre,
» Que li bons rois ne l'alast prendre,
» Et detruire et pettre à l'espée.
» Et si l'a tante arse et bruslée.
» Là veit-on maint drap de soie,
» Et de fin or qui resambloie
» Ardoir; et mainte dame belle,
» Maint Sarrazin, mainte pucelle,
» Maint Turc et main enfant perir ».

2 Balducci-Pegolotti, *Pratica della Mercatura*, Cap. 10.

3 Id. Cap. 92. « Discende anche da 4000 cantara d'allume del Coltai a Setalia in Turchia, e vi è 14 giornate di vetturali per terra dal Coltai a Setalia ».

բառոյզ արար Նաւս աւելի քան զքառասուն. սակաւ աւուրբք յառաջ և հրդեհ ծախեալ էր տունս իբրև 80։

Կիսաժամաւ հեռի 'ի քաղաքէն՝ հիանալի ջրվէժ մի է, 'ի հարիւր ոտնաչափ բարձուէ քարավազից 'ի ծով թափելով ուժգին շառաչմամբ, ծանօթ և հին աշխարհագրաց՝ յատուկ Ջրվէժ, (Catharractes) կոչմամբ. և թուի առաջք մի գետոյն որ անցանէ ընդ քաղաքն, և Տուտէն կոչի 'ի Թուրքաց։ Են և այլ վտակք մանունք՝ սատարիչք ջրաղացից։ — Յոյժ զուարճալի և բարեբեր են սահմանք Ատալիոյ, ոչ միայն պիտանեգոյն բերովք այգեաց, Թզենեաց, Թթենեաց, Նարընջենեաց և կիտրոնի, այլ և բազմատեսակ բուսովք և ծաղկամբք՝ 'ի դաշտային և 'ի լեռնային դիրս, որպէս տեսցի 'ի ստորակարգեալն ցանկի, ըստ քննութեան այլ և այլ բնագէտ ուղևորաց[1], թէ հաճոյ թուեսցի ակն արկանել, և յիշել զոր ասացաքս 'ի ցուցակի բուսոց Պրիտ լերին Ջեթունի (յէջ 180)։

123. Երկու փարսախօք յելից Ատալիոյ կան աւերակք այլոյ քաղաքի կամ Նաւահանգստի, յանուանեալ տեղւոյն Լաարա. Նաւահանգիստն ձեռագործ է պատնիշափակ, երկայնաձև, 'ի կողմանէ ունելով մուտս, մասամբ կանգուն, մասամբ քայքայեալ կուտակեալ 'ի ծովու, խորտակելով զալիս նորին. առ ծովափին երևի և ամբարտակ ճեմելի, յորոյ թիկանց տակաւ ամբառնայ գետինն, ծածկեալ դերբկօք սեանց և այլոց մասանց կարի հին շինուածոց. յորոց միայն մասն կամարակապ ազուգայից միայ կանգուն, և կամարք ինչ առ ծովեզերբն։ Աւերակքս թուեցան ոմանց[2] Մագիւդոս քաղաքի, Μάγυδος, նոյն համարեալ և ընդ գրեալն (առ այլևայլ հեղինակս) Μάσηδος, Μάτυδος. բայց 'ի դրամսն՝ և յինքնիշխանականսն և 'ի կայսերականս (առ

1 Silene Pamphyliana, Ճլէլէկ պամփիւլեան.
— Cappadocica, Ճլ. կապպադովկեան.
— papillosa, Ճլ. պտկաւոր.
— Heldreichij, Ճլ. Հելտրայխեայ.
Saponaria Pamphylica, Օշնան պամփիւլեան.
Gipsophilla pillulifera, * Գաճի կլուլաբեր.
Tunica Pamphyliaca, * Պատմուճանիկ պամփիւլեան.
— hispidula, Պ. խատուկ.
Alsine sabulinea, Բզբուկ ստբուլինեան.
Arenaria Pamphylica, * Աւազուկ պամփիւլեան.
Paronychia macrosepala, * Քցըմի երկայնափերթ.
Hipericum Pestalozza, Գաճամօրու պեստալոցցեան.
Stellaria Cilicica, * Աստղի կիլիկեան.
Mathiola bicornis, Մաթիոլա երկեղջիւր.
Erodium Tmoleum, * Ճայակտուց տմոլեան.
— Jacquinianum, Ճ. ժագինեան.
Pistacea Palestina, Պիստակ պաղեստինեան.
Trigonella polycarpa, Հացհամեմ պտղաշատ.
— Smyrnea, Հաց. զմիւռնիացի.
— Hierosolymitana, Հաց. երուսաղեմացի.
Medicago coronata, Առպատտ պսակաւոր.
— denticulata lappacea, Առպ. կեռատնի.
— disciformis, Առպ. սկուտղաձև.
— elegans, Առպ. ազնիւ.
Trifolium stellatum, Առուոյտ աստղաձև.
— Pamphyliacum, Առ. պամփիւլեան.
— subterraneum, Առ. ստորերկրեայ.
— nidificum, Առ. շինաբոյն.
— nervulosum, Առ. ջղենիկ.
— suffocatum, Առ. մղձկեալ.
Lotus pusillus, * Լցդենի ? նկուն.
Colutea melanocalyx, * Կարկի սևաբաժակ.
Astragalus Pamphyliacus, Խազխրան պամփիւլիացի.
Poterium verrucosum, * Բաժկի կոճճաւոր.
Umbilicus globulariæfolius, * Պորտի գնտատերև.
Sedum littoreum, Գառնադմակիկ ջրափնեայ.
Saxifraga hederacea, Քարկոտրուկ բաղեղնեայ.
Bupleurum pulchellum, * Կողեգնի գեղանի.
Pimpinella Cretica, * Սիզուկ կրետացի.
Tordylium lanatum, Ճակակուլ ասրուեակ.
— brachytænium, Ճ. ստեղնաձիգ.
— Pestalozzæ, Ճ. պեստալոցցեան.
— Apulum, Ճ. Բուլաց.
Torilis triradiata, Ճիմար ? եռատեղն.
Rubia Ollivieri elliptia, Տորոն Օլիվիերեան.
Asperula tenuifolia, * Խառի (Մարգամարոս ?) նրբատերև.
Galium serotinum, Կարանծի-խոտ անագան.
— dumosum, Կա. մացառուտ.
— peplidifolium, Կա. մեկնատերև.
— hispida, Կա. խոզանուտ.
Valerianella costata, Մրուանտակիկ կողաձև.
— corymbifera, Մր. ողկուզաբեր.
Valerianella turgida, Մր. ուռուցիկ.
Chrysophtalmum dichotomum, * Ոսկիակն երկճիւղ.
Phagnalon græcum, * Սանեփ յունական.
Heliochrysum niveum, * Արևոսկի ձիւնական.
Micropus supinus, * Կարճոտն յորսայս.
Evax eriosphæra, Եւաքսի ասրագունտ.
Anthemis carnea, Անթեմ մսուտ.
— chia, Ան. քիացի.
Senecio leucanthemifolius, Գառնամանուկ սպիտակափունջ.
— vernalis, Գ. ընտանի.
Cirsium cinaroides, * Փշակնդառ.
Camæpeuce alpini, * Գետնանաճի ալպեան.
Picris campylocarpa, * Դառնենի կորապտուղ ?
Zacyntha verrucosa, Զակինթիա կոճճաւոր.
Campanula propinqua, Կանթեղնիճ ընդելակ.
Podanthum lobeloides, * Ոտակոտն բլթակաւոր.
— linifolium, Ո. վշատերև.
Anchusa hybrida, Շէկխարի կարկամ.
— limbata, Շ. երիզակաւոր.
Simphytum Palæstinum dentatum, Շամփիտակ պաղեստինացի.
Onosma strigosissimum, * Իշհոտոտ վտիտ.
— oreodoxum, Իշ. լեռնցի ?
Alkanna Pinardi, Խարի Պինարտեան.
— macrophylla, Խ. երկայնատերև.
Mandragora officinalis, Մանրագոր դեղագործաց.
Verbascum leptocladum, Խռնդատ նրբակեղև.
— myriocarpum, Խ. բիւրապտուղ.
Linaria longipes, * Վշենիկ երկայնոտն.
Scrophularia Pinardi, * Խոզելընդի Պինարտեայ.
Veronica Syriaca, Վերոնիկ Ասորւոց.
Nepeta Cadmea, Կատուախոտ կադմէացի.
Sideritis erythrantha, * Երկաթբուժակ կարմրածաղիկ.
— condensata, Եր. հոծեալ.
Stachys aleuritus, Եզնախոտն ալեւրական.
Lamium tenuifolium, Եղինճմայր նրբատերև.
Teucrium Montbretij, Ջարօշ Մոնպրետեայ.
Euphorbia thamnoides, Աբարբիոն պաղաւէտ.
— Sibthorpi, Աբ. Սիբթորպեայ.
Urtica membranacea, Եղիճ մզանուտ.
Quercus coccifera Palestina, Գզթորաբեր Կաղնի պաղեստինացի.
Arum Dioscoridi, Ղուփճ Դիոսկորեան.
Orchis sancta, Շան-ձուք նուիրական.
— simia, Շ. սիմեացի ?
— punctuata, Շ. խայտաբղէտ.
Gladiolus illiricus, * Ագռաւաթուր լիւրիկեցի.
Fritillaria lycia, Թագաւորապսակ լիւկիացի.
Ornithogalum oligophillum, Շնախոտր սակաւատերև.
Scilla hyacinthoides, Մկնսոխ յակընթատերև.
Bellevalia trifoliata, Պելլեվալիա եռատերևեան.
— Heldreichij, Պ. Հելտրայխեայ։

2 Leake, Numismata Hellenica-Asiatica, Greece, 79-80.

Ագուստեա և Սեպտիմ. Սեւերոսի) անուն Մագիւդացւոց դրոշմեալ երեւի, ΜΑΓΥΔΕΩΝ. և կերպարանին 'ի նոյին Պալլաս, Ապողոն, Հերմէս, զանազան նշանակք, ևս և գետ գիւղակերպ։ Մագիդոս գաւի և լճակակողմնական վիճակս նաւահանգին Պամփիւլիոյ։ — Բնական իմն ջրանցք եւս են անդ, 'ի քարացուցիչ նիւթոյ ջուրցն խողովակաձև գործեալ, որեք որեք ցերեք առնաչափ խոր. վկայեցին տեղացիք զի չէ լինել ջուրն այն յորդաւոր, կրայնն գոլով, այլ խառնեալ ընդ ծովային ջրոյ՝ լինի բուժիչ հարբելի։ Այս ջուր թուի կոչեցեալն Գարա-սու, և է փոքր փոքր. յորոյ յելից թափի 'ի ծով հզօրագոյն գետակ եկեալ 'ի լերանց Պիսիդիոյ, Աք-սու (Սպիտակ ջուր) կոչեցեալ, 'ի հնումն Կեստրոս, իբրև 100 Ք. լայն մերձ 'ի բերանն, և 3-4 Ք. խոր։ — Ցամմէ նորին (յարևմտից) առ Մուրդանա աւանաւ՝ որ քսան մղոնաւ չափ հեռի է 'ի ծովէ, կան աւերակք Պերգէ քաղաքի, ուր քարոզեաց Առաքեալն Պօղոս. երևին ցարդ թատրն մեծաշէն, ատաղէքն 17 կարգ աստիճանօք կամ նստարանօք, որ արդ զոմ է ուղտուց, դղեակն 'ի բարձու, յորում էր անուանի տաճար Լուսափայլ կամ Լուսաբեր Անահտայ (Diana Lucifera), հոյակապ շիրիմք արձանագրեալք, հետք փողոցաց, աշտարակք, դրունք, կամարք, սիւնք բազում, պէսպէս քանդակք։ Ի բուսականս ասէ նշանակելին 'ի սահմանս Պերգէի իբր յատկագոյն, Ձիասամիթ թանձրաբաղարթն (Hippomarattrum crassilobum), և Ցախկի Հելտրայ-



110. Թատր Պերգէի.

խեայ (Rhamnus Heldreichij)։ — Ի հիւսիսոյ արեւելից Պերգէի աւելի մղոնաւ 'ի բացեայ՝ 'ի վերայ քարահատաբլրի երևին հնագոյն եւս աւերակք Սիւլլիոն քաղաքի, Σύλλιον կամ Σύλλειον, Syllium, Sylleion, առ նորին գետով. Թագուածք պարսպաց, տաճարի, ապարանից, դղեակ մի մեծ և սիւնազարդ, յարևմտից կողմանէ ունելով հզօր և բազմայարկ աշտարակ քառակուսի. զորգիս Հիսար-քէօյ կոչէ տեղիս այս։ Մեծն Աղեքսանդր յետ նուաճելոյ զԱսպենդ նուաճեաց և զբազումս գեղս, որոց բնակիչք խնամով իմն պաշտօն մատուցանէին Մեծ դից մօր կամ լուսնի, և քնարահար Ապողոնի, որպէս յայտ առնեն և դրամք նորին, յորս կոչին Սիւլլիացիք կամ Սիլլիացիք, ΣΥΛΛΙΕΩΝ, ΣΙΛΛΥΕΩΝ։ Ընդ մէջ սորա և Պերգէի են գեօղք Խոտուրա, Զագայլու, Սօլագ, Աղալը քէօյ, և այլն. Ի վերայ գետոյն բազում կամուրջք են արկեալք 'ի հնումն և 'ի նորումս։

Ցարևելից Կեստրոսի՝ հնգետասան մղոնաւ չափ 'ի բացեայ՝ են մնացք այլոյ գետոյ, Քէօփրիւ չայ (Կամրջագետ) կոչեցելոյ, այն է Եւրիմեդոն նախնեաց, որ իջանէ 'ի լերանց Պիսիդիոյ և Լիկաոնիոյ, ընդ մէջ երկոցուն ճգաց՝ կոչեցելոց առժմիկ Եշէկալի կամ Եշէկավ և Պէկշէհիր (յանուն քաղաքաւանին)։ Գոլերգն 'ի միջոցի երկոցուն գետաբերանացն հաւաստեալ է։ — Եւրիմեդոն՝ նաւարկելի էր 'ի հնումն. յորում և դէպք մի մեծ եղեն՝

նաւամարտի Յունաց և Պարսից առ Քսերքսեաւ, 466 ամօք յառաջ քան զՔրիստոսական փրկչին. առաջնոցն՝ ասեն ոմանք 600 նաւս ունել, և առ նուազն 350, իսկ Յունաց՝ որոց առաջնորդէր Կիմոն՝ էին 200 եռամթիք «արագըն» թացք յոյժ և արագադարձք. զոր յայնժամ Կիմոն «ընդարձակ ևս գործեալ՝ կամուրջ մի յաւել 'ի տախ» տակամածն անդր, զի առաւել ևս թուով զօրականք «մարտ եդեալ կռուիցին ընդ թշնամիսն:... Արիոման» դոս Գովբրինացի էր սպարապետ մեծ առ հասարակ «բանակին (Պարսից). և առկայացեալ նաւուքն մերձ «յԵւրիմեդոն՝ ոչ ինչ համարձակէր 'ի վէգ գալ ընդ «Հելլենացւոց. այլ անդանօր սպասեալ մնայր նա նա» ւաց ևս ութնից փիւնիկեցւոց որ գային 'ի Կիպրոսէ: «Բայց Կիմոն զառաջս առեալ զալստեանն՝ խաղայր «դիմէր ընդդէմ թշնամեացն. կամէր բռունն և յակա» մայ ստիպել զնոսա 'ի նաւամարտ. նոքա խոյս տուեալ «վերջոտնեալ գնային զառաջինն 'ի գետ անդր. այլ «ապա զհետամուտ Աթենացւոցն տեսեալ՝ արձանա» ցան ընդդէմ... այլ 'ի ծովամարտին յայնմիկ ոչինչ «արժանի այնպիսի նաւահանգիսի նահատակեալք՝ «դարձան արագ 'ի ցամաքն կոյս. որք վաղաժամանքն «եղեն՝ 'ի դուրս վազեալ 'ի նաւացն՝ ապաւինեցան 'ի «բանակ անդր ցամաքին, որ մերձ ճակատեալ կայր. «իսկ որ ձերբակալքն եղեն՝ կոտորեցան, հանդերձ նա» ւուքն: Այլ թէ մեծ էր նաւահանգէսն, յայտ է, զի «թէպէտ և բազումք 'ի նոցանէն ապրեցան և բազումք «ևս խորտակեցան, 'ի վերայ այսր՝ և նաւս 200 'ի վառ» թարելոց անտի հասին կալան Աթենացիք: Ապա բա» նակ ցամաքին իջեալ 'ի ծովափն, վասն անհնարին «թուէր Կիմոնի՝ զվաստակաբեկ Հելլենացիսն առնուլ «խաղացուցանել 'ի ցամաք ընդդէմ առոյգ խուժանի «յոգնաթիւ բարբարոսացն. սակայն և քաջարիք նահա» տակեալ նոքա 'ի յաղթութենէն զոր տարան՝ կազմ և «մտադիւրագոյնս խառնել անդրէն 'ի կռիւ, խաղացոյց «արտաքս զհետևակազօրն ջերմաջերմն այն ինչ ելեալ 'ի «նաւամարտէն. նոքա արագ արագ դիմեալ անկանէին «'ի վերայ Պարսից՝ մեծաւ աղաղակաւ. այլ քաջապէս «արութեամբ ընդդէմ դարձեալ բարբարոսացն, սաս» տիկ և գոռ լինէր մարտ պատերազմին. և անկանէին «'ի կողմանէ անտի Աթենացւոց արք աւագք և հռչա» կաւք և կորովիք. բայց և այնպէս յերկարագոյնս 'ի «դիմի հարեալք՝ 'ի վերջէ ուրեմն 'ի պարտութիւն մատ» նեցան, հարան խորտակեցան, և մնացեալքն 'ի գե» րութիւն վարեցան. և առան խորանք նոցա ամենայն «հարստութեամբ լի: Եւ յայնժամ Կիմոն իբրև ըմբիշ «քաջ և անպարտելի՝ կրկին մարտից յաղթական 'ի «միում աւուր, 'ի վեր վաղեաց քան զփառս Սաղամի» նայն 'ի ցամաքակռուին, և քան զՊլատեայն 'ի նա» ւամարտին [1] »: Եթէ էին և 'ի Հայկազնեայցս ոմանք 'ի նաւատորմղի անդ Պարսից՝ ոչ գիտեմ, այլ աներկբայապէս 'ի բանակի ցամաքին էր և գունդ Հայոց նիզակակցաց կամ հարկատուաց Քսերքսեայ, և ընդ բիւրաւորաց նորին նկուն եղելոց 'ի Յունաց, զորս յետ չորեքհարիւր ամաց գամ մի նուաճեաց ատանօր Արշակունին Տիգրան: Այլ ո՞ր քուրմն Արմաւրայ կարէր յայնժամ գուշակել, թէ վայրն ուր այսպիսի անցք անցին՝ յետ 1700 ամաց պատկառ կալոց էր իշխանութեան հոմացեղին



111. Հին դրամ Ասպենդոս (Եպատֆեդ գրեալ).

իւրոյ Լեւոնի: — Յետ 280 ամաց մեծի նաւամարտին՝ 'ի սոյն գետ զկայ առին և քառասնիւ չափ նաւք Հռոդացւոց դարձեալք յայլմէ նաւամարտէ ընդ Աննիբաղայ՝ 'ի ծովափունս Սիդէի:



112. Դրամ Ասպենդոս առ Մաքսիմոս կայսերաւ.

Յաջմէ գետոյն (յարեւմուից) ութ կամ տասն մղոնաւ չափ 'ի վերոյ բերանոյն՝ առ Պալխիզ գեօղիւ՝ կան աւերակք Ասպենդոս հին քաղաքի, Ἄσπενδος, ըստ ոմանց կառուցելոյ յԱրգիացւոց. կարի ճոխ և բարգաւաճ


113. Աշտարակ 'ի աւերակս Ասպենդոս.

էր, և նաւք վաճառաբերք գային անդր. առ պարսպօք նորին սպանաւ առաքինի և քաջ զօրավարն և ազատարար Աթենացւոց՝ Թրասիբուլ, 389 ամօք յառաջ քան զՔրիստոսական փրկչին. յետոյ անձնատուր եղև քաղաքն 'ի

1 Պլուտարքոս, 'ի Զուգակշռութեան վարուց Կիմոնի, ըստ թարգմանութեան Հ. Եղիայ Վ. Թովմաճանեան:

*Մեծն Աղեքսանդր՝ մինչ սա պաշարել խորհէր։ Ընդարձակք են դերբուկք պատեալք զգագաթամբ և զկողիւք բարձր բլրոյ, յորս երևի և հռոմէական ոճ ճարտարապետութեան, կրկնակարգ կամարօք և սեամբք. Նոյնպիսի են և ագուգայքն. դղեակն կամ այլ ինչ չէնք 'ի գագաթան տեղւոյ խոշորագոյն են ոճով. պերճագոյն ասպարէզն, թատր մեծ հռոմէական 21 կարգ նստարանօք, գրեաթէ կանգուն մնացեալ, այլ ոչ վայելչաշէն։ Ի բնիկ վաղեմի դրամս (որք ըմբիշս և մարտիկս կերպարանեն), անուն քաղաքին օտարոտի իմն վերծանի* Եստֆէդիւս, ΕΣΤΓΕΔΙΙΥΣ. *'ի միջին դարս կոչեցաւ քաղաքս այս և* Պրիմուպօլիս *կամ* Տրիմուպօլիս, Πριμούπολις Τριμούπολις։ *Գոն և 'ի սահմանս Ասպենդու մնացուածք վաղեմի շինուածոց, որպէս 'ի պրակի քարուտ բլրի միոյ՝ աշտարակք յունականք և սիւնք։*



**114.** *Չորեքդրամեան Սիդէի* [1].

*Սակաւուք հեռի յարևելից բերանոյ Եւրիմեդոնի՝ են մուտք վտակի փոքու, և մեծամեծ կոչկոռք վիմաց, և իբր կիսով մղոնաւ 'ի վերոյ՝ 'ի պատուածի նորին գետակի, գեօղ մի ամայի տամբք և եկեղեցեաւ՝ ետես Պոֆորդ յամի 1812։ — Ի սոյն սահմանս խնդրելի են և մնացուածք* Պամփիւլեան Սելեւկիա *քաղաքի։ — Աստի սակաւ փարսախօք ընդ արևելս տարածանին 'ի ծովեզերին աւերակք Էսկի-Ադալիա կոչեցեալք 'ի Թուրքաց, որպէս և յիտալացւոց միջին դարուց՝* Satalia Vecchia, *և 'ի Յունաց* Παλαιά Ἀτταλεία, *որ ըստ գիտնոց է հին և անուանի քաղաքն* Սիդէ, Σίδη, *հիմնեալ 'ի Կումէացւոց, (ընդ 36°, 45', 37" լայն. և ընդ 29°, 5', 38" երկայն.). զհին անունն յիշէ Հաճի Գալֆա՝ Սէյտի կոչելով։ Առասպելասէրք համարին յանուն Սիդայ կնոջ Որիոնի (որ է Հայկն Յունաց) կոչել քաղաքիս. 'ի դրամս Սիդեայ յաճախագոյն տիպք են Աթենաս Պալլաս, Յաղթութիւն և Նուռն, որպէս տեսանի և յայսոսիկ (Թիւք 114-115), և յանուն բնակչացն գրին* CΙΔΗΤΩΝ, *և երբեմն ընկերութեամբ այլոց քաղաքաց (Պերգէի, Ատալիոյ, և այլն). յորմէ յայտ լինի՝ զի քաջանշան էր 'ի միջի նոցին. բայց ասի վասն բնակչացն վաղ մոռացեալ զհայրենի բարբառն՝ և հնարեալ ինքեանց լեզու նորալուր. անձնատուր եղեն և սոքա 'ի Մակեդոնացին Աղեքսանդր՝ որպէս զԱսպենդացիս հակառակորդս իւրեանց։ — Առ նաւահանգստիւ Սիդեայ հարին խորտակեցին Հռոդացիք զտորմիղ նաւաց Անտիոքոսի Մեծի՝ որում եկեալ էր յօգնութիւն գոռն Աննիբաղ, յամի 186 նախ քան զԹուական Փրկչին։ Աստանօր և ելուզակաց Կիլիկիոյ հաստատեալ էր զկենդրոն գերեվաճառի և աւարի իւրեանց. Նուաճեալ 'ի Հռովմայեցւոց կարգեցաւ Սիդէ գլուխ քաղաքաց Ա Պամփիւլիոյ, և առ քրիստոնէութեամբ՝ մետրապօլտական նահանգ եպիսկոպոսաց* [2]։ — *Ի քաղաքէ աստի ընծայեցաւ Եւստաթէոս եպիսկոպոս Անտիոքայ, անուանի յեկեղեցական պատմութեան 'ի կէս Դ դարու. և Տրիբոնիանոս մեծ օրէնսգէտ 'ի Զ դարու, յաւուրս Յուստինիանոս կայսեր։*



**115.** *Դրամ Սիդէի առ Դոմետ. կայսերաւ.*

*Ի տափարակ ցամաքակղզւոյ կառուցեալ է քաղաքն Սիդէացւոց, շրջապարիսպ ամենուստ, երիւք դրամբք 'ի ծովակողմն և մի 'ի ցամաքին կուսէ, որոյ պարիսպք հզօրագոյն են և արուեստաշէն, իբր 12 Զ. բարձրութեամբ, երկյարկեան մարտկոցօք, և քառակուսի աշտարակօք մէն իբր 65 Զ. հեռի 'ի միւսոյ. 'ի ցամաքի դրանէն որ արդ աւերեալ է՝ փողոց սալայատակ տանի 'ի հրապարակ քառակուսի իբր 60 Զ. տրամագծաւ, շրջապատեալ երկկարգ սեամբք, որոց խարիսխք լոկ մնան արդ. 'ի միջակին կայ պատուանդան մեծ՝ որ կրէր անդրի հսկահասակ, և 'ի միոյ կողմանէ տաճար մի՝ դռնակամարօք։ Նշանաւոր քան զամենայն շինուածս է թատրն մեծ՝ 'ի զառ 'ի վայր գետնի, յորում փորեալ է կէսն, իսկ վերին մասն արուեստաշէն, լուսնաձև կամ պայտաձև. իբր 130 Զ. է արտաքին տրամագծին, 'ի ներքուստ 40 Զ., բարձրութիւնն 25. քառասունևինն շարք նստարանաց են երկկարգեան, 26 'ի ներքոյ, 23 'ի վերոյ լայնագոյն մասին, 'ի սպիտակ կճոյ սրբատաշք, բաւականք 'ի տանել մինչև 15,000 հանդիսատեսս. արդ յատակն դերբուկօք և մացառօք ծածկեալ է, զոր 'ի պեղելն՝ յայտնին քանդակք և արձանք. այս ամենայն գրեաթէ անաղարտ մնայ, բայց հանդիսատեղին ոչ նոյնպէս։ Առ երի թատերն երևին մնացորդք բոլորշի շինուածոյ փոքու, և 'ի նշանակաց կենդանակերպից կարծեցաւ աստեղատուն կամ դիտարան լինել։ Հանդէպ ցամաքի դրանն արտաքոյ կայ եռախորան իմն շինուած քարաշէն սրբատաշ վիմօք և նուրբ քանդակօք, յորոյ դերբուկս գտան և անդրիք. համարի լինել բաղանիս, զի սակաւուք 'ի բացեայ կայ և ագուգայ. նաև աշխարհագիրն Օսմանեանց յիշէ անդ բաղանիս յանուն Օրխանայ։ Ի ծայր ցամաքակղզւոյն 'ի Հս. Մ. են երկու նաւահանգիստք ձեռագործք, այլ արդ խցեալք 'ի հեղեղավար քարանց և աւազոյ գետոյն. կանգուն կայ մասն մի ամրարտակաց նոցին մեծամեծ վիմօք ձուլելոց. 'ի կարծիս լինէր Պոֆորդ թէ 'ի սկզբանն երկոքեան ևս մի էին, և լինէր յայնժամ*

[1] Այսպիսի գեղեցիկ չորեքդրամեանք Սիդեայ յոգնախուռն գըտան յամին 1845, վասն որոյ նուազեաց գին արժէիցն։

[2] Յեկեղեցական վիճակագրութեան Իերոկլեայ՝ նախադաս 'ի Թեմս Պամփիւլիոյ կարգեալ է Սիդէ։

կարի ընդարձակ և բաւական տարմջի նաւաց Սիդէա_ ցւոց հաշակելոյ 'ի նաւարկութեան ։ Վասն նուազու_ թեան ջրոյ' (զի չիք 'ի սահմանս քաղաքին ոչ վտակ և ոչ աղբիւր), թուի լքեալ 'ի բնակչաց, և յայն սակս անաւեր մնացեալ թատերն։ Ոչ սակաւ արձանագրու_ թիւնք յունականք ընդօրինակեցան 'ի քաղաքիս. 'ի միում' որ առ դրան միոյ մեծի 'ի թատրն' վերծանի անուն Տիբերեայ Կղաւդիու։

124. Ընդ մէջ աւերակաց Սիդէի 'ի Մ. Հս. նորին, և աւերակաց Ասպենդոսի' յերից նորին, և Եւրիմեդոն գետոյ, 'ի տափարակ բլրի ուրեք կան աւերակք այլոյ քաղաքի, Գալ-չէհիր (Փարէքաղաք) կոչեցեալ 'ի Թուր_ քաց, այլ չեն քննեալ ։ — Երկծամու ճանապարհի կամ աւելի' յարևելակողմն' ծովեզերքն ծածկեալ են մացա_ ռօք և ճահճօք, մնացորդք գործելով ամառանի զընա_ կութիւն, վասն օդոյ և ամայի ձեան. բայց գտանին բազում հին շինուածոց մնացորդք 'ի նոսին, մանա_ ւանդ 'ի բարձրաւանդակ տեղիս. որպիսի են և գիւղ Տօրպազար գեղջ, կարծեմ 'ի ծոցահովտին Մէնաւգա_ տայ ։ — Մի է սա 'ի հզօրագոյն գետոց Պամփիւլիոյ և Պիսիդիոյ, և նաւարկելի խոկ 'ի ստորին մասին, իբր 35 Զ. լայնութեամբ և 4 Զ. խոր. երկու կամ երկու և կէս փարսախաւ յերից աւերակացն Սիդէի թափի 'ի ծով. պայծառ են ջուրքն և կարկաչունք. 'ի հնումն կոչէր Մէլաս ։ Եզերն մնացորդք հին շինուածոց յափունս նո_ րին, և աշտարակ կործանեալ յանցան' սակաւ մղոնօք



116. Աղուգայք յԱսպենդոս.

'ի վերայ բերանոյն. անդ է և աւանն Մէնաւգատ պազար կամ Մանաւգաթ յաջմէ ջրոյն, և բաժանեալ և 'ի հարա_ ւոյ կուսէ յարմկան գետոյն բերդ մի հին' անուանեալ ձեռք, Մէնաւգատ-գալէսի, հզօր պարսպաք պատեալ և զանազանեալ աշտարակօք. յորում բնակեն սակաւա_ թիւ Թուրքք իբրու պահապանք. 'ի տախտակ մի վիմե_ ղէն 'ի հիւսիսակողման պարսպին' գրեալ է արաբերէն տառ այսպիսի. « Մի պարծիր ընդ չքեղ երևոյթ. անցի » և ես ընդ փորձ պատրանացդ. աշխարհս բաց և հա_ » մարձակ է առ ամենայն դառ մարդկան »։ Այլ իմն փոփոխելի էր հայկական ինչ արձան գտանել անդ կամ մերձաւոր. քանզի մի է և սա յանուանէ նշանակելոց արևմտագոյն բերդորէից հնազանդելոց Լևոնի, յորոյ 'ի սկզբան թագաւորութեան բերդատէրն էր յայն իշխանն Միխայլ, որ և տէր Ալարայ. պատմիչ մեր գրէ զանուն տեղւոյս Մանաւգատ¹։ — Անդրագոյն քան զաւանս Մանաւգատայ եղանեն ընդ գետն նաւք կերպարանք, զի երկու Զ. խոր է ջուրն և աւելի քան զ'60 լայն։ — Ի վերին հովիտս գետոյն նշանակի քաղաքաւան մի Մարլա անուն, յարևմտակողմն Սայլա լճի և 'ի հարաւոյ Սեւտ- չէհր քաղաքի։ Յաշնէկէն (յարևելից) ընդունի Մանաւ_ գատ վտակ մի կամ հեղեղատ իջեալ ընդ ձոր անձուկ,

1 Ցուցակք տարեգրութեան Սմբատայ Գունդստապլի միայն ընթերցեալ է չ փոխան ղ տառի, և հրատարակեալ Մանաչատ։

յորոյ վերայ արկեալ է կամուրջ կարկատեալ հին կոփա֊ծոյ քարամբք, և կոչի Քեսիկ քէօփրիւ (Կտրած-կա֊մուրջ)։ Սակաւուք հեռի 'ի Մելասայ գոյ Նեվրիդ? սու, որոյ ստորին սահմանք ճախնայինք են, վերնակողմանքն լեռնային. նոյնպէս և որ յելից նորին սակաւուք հեռի և զուգընթաց Գարփուզ-դրմագ, առ որով 'ի բլրի մերձ 'ի ծով գիւղն Ջամուշ-քեօյ։ — Ցելից սորա գեղեցիկ հովիտ մի շրջափակ բոլորշի բլրօք. յորոյ յարևելից անցեալ ընդ ձորակ քարափն՝ գոյ գետակն Ալարոյ իջեալ 'ի Թիկանց Կեօք-տաղ լերին, և թափի 'ի ծով սակաւ մղոնօք 'ի բա֊ցեայ 'ի բերանոյ առաջնոյն, ունելով 'ի վերայ կամուրջ փայտաշէն. հուպ նմին է յաջմէն՝ Գարագայա գիւղ, իսկ յահեկէ՝ գեօղաւանն Ալարա (Ալլար գրեալ յԵւրոպացի ուղևորաց). առ որով աւերակ քառակուսի հին շինուա֊ծոյ. 'ի հանդիպոյ (յաջմէ գետոյն) 'ի սեպացեալ քարա֊բլրի, 'ի միջի կանաչագեղ պուրակաց ամբառնայ բար֊




117. Ցատակաձեւ Սիդէ քաղաքի.

ձրահայեաց բերդն Ալարա-գալեսի կոչեցեալ յայժմուս, և Ալարոյ բերդ յարքունի պատմչէ մերմէ. որում, որպէս սուղ մի յառաջ ասացաք՝ տիրէր իշխանն Մանաւղատայ՝ Միխայլ, մի 'ի լիճ պարոնայց Լևոնի Թագաւորի. այլ և նա և տեղին՝ մի զոյն նուազ յիշին 'ի պատմութեան մերում. իսկ արտաքնոցն՝ բնաւ անծանօթ թուին հին յի֊շատակքն. Թուրքք ասեն Ալայէտտին սուլտանի շինեալ զբերդս, թերևս ընդ Ալայայ զուգելով։ Գեղեցիկ և բա֊րեբեր յայժ են սահմանք Ալարոյ, ուր և արմաւենիք ա֊ճեն. և հարուստ անդաստանք բամբակի, ծխախոտոյ, կնջըթի և մայիզոյ, ձիթենիք, կաղնիք, դափնիք, դափնե֊վարդ, և այլն. 'ի պուրակսն ղօղին և կինճք։ Ի գեղջաւա֊նի աստ ագաւ փռանկ կոմսն Բուրդալէս (Pourtalès) յ'19 հոկտ. 1845։ — Մերձ է յաւանն և 'ի ծոմն աւերակ բերդ Եղլաճ գալեսի (Օձաբերդ), այլ ոչ գիտեմ որիչ եթէ նոյն իցէ ընդ Ալարոյ բերդի։ Ցարևելից սորին է գիւղն

Իճճիր-քէօյ (Թզոյ գիւղ)։ — Ցերի մօտից գետոյն Ալարոյ՝ յելից կուսէ՝ բազուկ մի է մացառուտ երկրի երկայնեալ 'ի ծով, Գարա-պուռունն կոչեցեալ 'ի Թուրքաց, իսկ 'ի հնումն Հրուանդան Լեւկոթէայ, Promontorium Leucotheum, Լեւկոլլա, Leucolla, ըստ Պղինեայ, ուր տաճար մի էր նուիրեալ Լեւկոթէայ դիցուհւոյ ծովայնոյ, որ ըստ առասպելաց Յունաց նոյն ինքն է Ինով դուստր Կադմեայ և Հարմոնիայ, 'ի մոլեգնութենէ առն իւրոյ Աթամասայ պակուցեալ՝ ծովալէժ լինելով, ընկալեալ 'ի դից զմակագրականդ անուն Լեւկոթէա, որ նշանակէ Սպիտակափառ։ — Ցերի հրուանդանին՝ զատ յայլոց խարակաց կայ տափարակ փոքրիկ կղզեակ մի, իբրև 270 Զ. երկայն, քանի մի ոտնաչափ ևեթ 'ի վերոյ մակաւասար ջուրցն, որք և ծածկեն զայն 'ի մրրկի, ըստ ասելոյ մերձաբնակացն. երևին 'ի նմա փորածոյ բնակարանք, և ուրեք որմունք ևս։ Մերձ էր 'ի սա յարևմտից կողմանէ Կիբիւռա, ծովեզերեայ վիճակն Փոքրիկ Կիբիւռացւոց, ή Κιβυρατῶν παραλία τῶν μικρῶν, քանզի էր և Մեծ Կիբիւռա 'ի միջերկրեայս. և առ երի նմին յարևմտից կուսէ տաճար մի Արտեմեայ կամ Անահտայ. զարդիս տեղի վիճակին համարի 'ի խաղս վտակի միոյ Տալամնճայ կոչեցելոյ, առ որով Հործում գիւղ (Horzoom)։ Ի միջին ժամանակս Բիւզանդացւոց՝ ընդարձակեալ անուանն՝ Թեմ մի կամ մեծ գաւառ մի համարեցան Կիբիռական կոչմամբ կողմանքս այսոքիկ Պամփիւլիոյ, հանդերձ հիւսիսային սահմանորդօք, Cibyratica ըստ Լատինաց։

Ցարևելից Լեւկոթէայ հրուանդանին երկու փարսախաւ կամ աւելի՝ կայ միւս ևս հրուանդան, որ կարծի կոչեցեալն 'ի հնումն Պտղոմայիս, Πτολεμαΐς, յորում ընդ այլ հետս շինուածոց երևեցան և կիկլոպեան կառուցմունք. երկուստեք կային ձեռագործ նաւակայք, այլ արդ ամբարտակքն քակտեալք նշմարին 'ի ներքոյ ջրոյն, և արգելուն զմերձենալ նաւուց։ Ոմանք համարին 'ի մէջերկրեայս լինել զՊտղոմայիս, իսկ 'ի ծովափունքս զանուանեալսն յաապարիզաչափութեան՝ Աւգէ, Augae, և Աւնեսիս, Aunesis. բայց անստոյգք միայն այսոքիկ, զի արդ չկան գեօղք կամ անուանեալ ինչ տեղիք 'ի ծովեզերքս՝ յայսկոյս Ալարոյ, բայց Եշիլիլ քէօյ, և Աճըչարչար յեզր Դարկա-չայ (Աղաւաղետ) խորաձոր վտակի՝ որ ընդ մէջ Ալարայ և Ալայայ։ — Սակաւուք անդրագոյն քան զայս ընդ արևելս՝ նշանակի ('ի Չիհանշէֆէ) և այլ վտակ ծովամուտ՝ Էրճին (Ergin) անուն, որ թուի յայլմէ հեղինակէ նշանակեալն Քէրտիզ. և յեզեր նորին գտանի վայելուչ շինուած մի վաղեմի։ — Ի սորա ևս ելից սակաւուք 'ի բացեայ թափի 'ի ծով Ճիճ չայ. առ որով 'ի ձուաձև հովտի ուրեմն 'ի վերայ բարձանց նշմարին մնացուածք վաղեմի շինուածոց։ — Բազում մանր խորչք են 'ի ծովեզերքս և նաւակայք. մի 'ի յետնոցս կոչի Այի-Նիքոլա (Ս. Նիկողոս), որպէս կոչէին և Իտալացիք 'ի Միջին դարս, San Nicolò. և յայտ է թէ կարևոր տեղի կամ հանգիստ նաւաց վաճառականաց էր յայնժամ։ — Առօքօք թուի՝ յարևմտից Ալարոյ՝ և Ամաքսիա, Ἀμαξία, Hamaxia, կամ Անաքսիոն, Anaxium, փոքր քաղաք ծովեզերեայ՝ բարւոք նաւահանգստիւ, ուստի հանէին փայտ 'ի կազմութիւն նաւաց, հատեալ 'ի մերձակայ մայրեաց։ Գտանին պղնձեայ դրամք քաղաքիս՝ վերտառութեամբ ΑΜΑΧΙΩΝ, և պատկերաւ երիտասարդ գլխոյ և գաւազանաձև եռանկիւնւոյ։ — Բազում գեօղս, բերդս և եկեղեցիս աւերակս և ամայիս ետես Պօֆորդ յայսմ կողման ծովեզերացս, ընդ մէջ Ալարոյ և Ալայայ, և ոչ կարի հինս, և զարմանայր ընդ այնքան արագարագ անշքանալ նոցին [1]։ — Սանուտոյ 'ի ծովեգրագրութեանն՝ 'ի Սադալիոյ ցԴանտելոր (Ալայա), 70 մղոն գրէ, և յերկոցուն միջի զժայռն Ս. Փոկաս անուն, (Scolium Sancti Fochæ). իսկ 'ի տեղացոյց տախտակի իւրում՝ փոխանակ Փոկաս անուն ժայռի՝ նշանակէ երկուս տեղիս, Ս. Գրիգոր և Ս. Նիկողոս, որ է անշուշտ վերոյիշեալն։

## Բ. ԱՇԽԱՐՀ ՍԻՐ ԱՏԱՆԱՅ

123. Երկրորդ և գլխաւոր մասն արևմտեան ծովեզերաց Կիլիկիոյ, որ 'ի ծագաց Պամփիւլիոյ և 'ի հարաւոյ երկայնեալ Իմպարեան լերանց, 'ի Կոռակեսիոն գլխոյ ձգի մինչև 'ի սահմանս Սելեւկիոյ՝ 'ի Սարպեդոն սար, զմիջին և զընդարձակ զհարաւագոյն բոլորակն ունի աղեղնաձև երկրին մխելոյ 'ի Միջերկրականն, և զհարաւագոյն իսկ կէտ բովանդակ Փոքուն Ասիոյ 'ի նմին։ — Երկու կամ երիւք փարսախօք յելից հարաւոյ Լեւկոթէայ հրուանդանին՝ կայ մեծագոյն հրուանդան և ցամաքակղզի, անջրպետ Պամփիւլիոյ և Քարայնոյն Կիլիկիոյ և ակիզբն սորին, Կոռակեսիոն, Κορακήσιον, Coracesium ըստ Հնոց. որոյ անուն թուի արիական ծագմամբ Կոռակս կամ Կոռակք։ Ի դրամս նորին կայսերական պատկերօք հատեալս՝ անուն բնակչացն գրի ΚΟΡΑΚΗCΙΩΤΩΝ։ Նշանաւոր է և գրիւքն և բնութեամբ, որպէս է տեսանել 'ի պատկերիդ, առաւել քան զամենայն շրթունս եզերաց տեղագրելոց, կարկառեալ 'ի ծով անդր, « իբրև » բնական խմն ամրոց, զոր մարթ է անառիկ յարդարել, ասէ Պօֆորդ. և բազմաթիւ պարիսպքն և աշ» տարակք՝ քաջ յայտ առնեն՝ զի այնպէս իսկ գործել » նկրտեալ էր նախկին տիրողացն. ընդարձակ դաշտաւ » զատուցեալ կայ 'ի մերձակայ լերանց և ցածուն աւա» զուտ պարանոցաւ, յորմէ յախուռն ամբառնայ. եր» կուք 'ի կողմանցն քարաժայռք են բարձրաբերձք և ա-

[1] As we approached Alaya, we passed several villages, castles and churches, though all ruined and deserted, they are comparatively of recent construction, and afford a striking picture of the rapid impoverishment of this part of the Turkish empire. — Beaufort, 160.

» մննեին ուղղորդք. արեելեան կողմն՝ յորում կառու֊
» ցեալ է քաղաքն՝ այնպէս վախուտ է, զի թուի իմն թէ
» յիրար կուեալ կայցեն տունքն... խարակքն հինգ կամ
» 600 ոտնաչափ բարձրացեալք յերեսաց ծովուն՝ նոյնպէս
» ուղղակի իջանեն 60 կամ 70՛ 'ի ներքոյ ջրոցն. սակաւ
» ինչ հեռի յափանցն՝ անհետանան (կցեալ) ընդ բար֊
» ձրաբերձ լերինս մէջերկրեայս. այլ յայսկոյս նոցին՝
» վսեմական ընծայեն կերպարանս։ Ջանգուած նոցին է
» խիտ կրաքար սպիտակ, կարմրորակ յարտաքին երեսս,
» հանգունատիպ ժայռից արեմտակողման ծոցոյն Ատա֊
» լիոյ. հիւսիսակողմն հրուանդանին թխագոյն հերձա֊
» քար՝ վերամբառնայ 'ի ստորակայ կրաքարէ։... Խորշն
» հայի ընդդէմ հարաւային հողմոյ. վարկպարագի ինչ է
» տեղին խարիսխ արկանելոյ. չեն անդ նաւակայք և ոչ
» ամբարտակք. այլ ուր և ուրեք ճարտար գաղթականաց
» հնոյն Յունաստանի հաստատեալ էր բնակետղ ծովա֊
» յին, գուն գործեալ էր լնուլ յարուեստէ զպակասու֊
» թիւն բնութեան. անմարթ է կարծել թէ այսպիսի
» հզօր և կարեւոր տեղի՝ զրկեալ իցէ յապաստանէ նա֊
» ւուց. նա և յայտնի իսկ է տեղին՝ յոր 'ի դէպ էր լինել
» ամբարտակին »։ Այլ զի կարի մերձ էր 'ի տեսութիւն
տանցն՝ զգուշացաւ խոհական ծովապետն (Պոֆորդ) 'ի
մօտ մատչելոյ՝ 'ի քննին մնացորդաց նոցին, զի մի խէթ
ինչ կասկածանաց արկցէ 'ի միտս բնակչացն։ Ջերկայ֊
նամիտ և յանդուգն վաստակ մարդկան՝ 'ի կառուցանել
յամուրս բնութեան զամուրս ձեռին արուեստի, խաղ
իմն առնել կամեցեալ թուի ծով. անդուլ ալեօքն բաղխե֊
լով և փորելով զստորոտս խարակացն, բացեալ մեծամեծ
փապարս քարայրից, որպէս թէ 'ի բնակութիւն ծովայ֊
նոց դից կամ յաւերժհարսանց, ըստ խորհրդածութեան
ուրումն։ — Ոչ է յայտ ո՛ զառաջինն նկատեալ զայսպիսի
դիրս՝ ոտնկոխ եղև, և յաւել 'ի բնականն զձեռագործ
ամրութիւն. 'ի գագաթան քարաբլրին երևին մնա֊
ցուածք կիկլոպեան որմոց և բեկորք սեանց, այլ յոյն




118. Կոռակեսիոն-Ալայա հրուանդան եւ յատակագիծ քաղաքին.

արձանագիր ոչ գտաւ։ Ցիչի 'ի պատմութեան՝ Անտիոքո֊
սի Ասորւոց թագաւորի պաշարեալ զայն, այլ ոչ կարա֊
ցեալ առնուլ՝ ընդդէմ կալով Հռոդացւոց. նաև ապ֊
ստամբն Տրիփոն զկայ էառ ստանօր առ վայր մի (144
ամօք Ն. Ք.). աստ և յեղուզակք Կիլիկիոյ յապահովէին
զնաւս իւրեանց, և աստուստ յարձակէին յաճախ 'ի գե֊
րութիւն նաւուց և նաւաստեաց. այլ ոչ կարացին մինչև
ցվախճան զդէմ ունել հռոմէական պնդութեան Պոմ֊
պէի, և ստանօր առ խարակօք Կոռակեսիոնի (յամի
65 Ն. Ք.) խորտակեցաւ զօրութիւն նոցա իսպառ [1]։

Հետաքննելի է մեզ գիտել եթէ 'ի տէրութեան մերոյ
Լեւոնի՝ 'ի վերայ ամենայն ծովեզերեայցս մինչև յԱտա֊
լիա, յո՞յր ձեռս էր ծովաբերդս այս. զի ոչ 'ի ցուցակի անդ
բերդորէից և բերդատեարց հանդիսացելոց 'ի թագակա֊
պութեան նորին, և ոչ այլուր յիշի այսու Կոռակեսիոն
անուամբ, և ոչ Ալայայ՝ որպէս կոչի զարդիս. և ոչ այ֊
լովքն ևս՝ որովք կոչէին զայն իտալացի վաճառականք և
նաւազք միջին դարուց, երբեմն Կանդելոր, Candelor,
որ և Calandros և Scalandros, Calanders, երբեմն՝ Castel
Ubaldo, Բերդ Ուբալդոյ, կամ սոսկ Baldo, Պալտոյ։

1 Բիւր մի 'ի հինիցն սպանան 'ի մարտի, երկու բիւրք գերի վա֊
րեցան, 1200 նաւք նոցա կորեան, նուաճեցան 120 նաւակայք. և այս
ամենայն յաւուրս քառասուն կատարեցաւ։ Ի ցամաքի՝ չորեքհարիւրիւ
չափ ամրոցք էին հինիցն, յորոց ոմանք 'ի Սեբաստիանէ Պոմպէոսէ
նախ նուաճեցան, ապա 'ի Պոմպէոսէ և 'ի Կիկերոնէ, յայտ է թէ
մնացին և ոմանք յայնցանէ 'ի ձեռս բարբարոսացն։

Բայց ես հաւանեալ եմ թէ սա է կոչեցեալն 'ի ժամանակակցաց նոցին 'ի մերոցս Հայոց՝ Կալօնօռոս։ — Քանզի ստուգապատում գրիչք գործոց Մեծին Լեւոնի՝ ծանուցանեն մեզ՝ զլուխ և առաջին ամենայն աւագորերոց պետութեանն կամ պարոնայց նորին՝ զՍիր Ատան. զոր և Պայլ թագաւորութեան իւրոյ կարգեաց և դաստիարակ ժառանգի իւրում Զապելի, 'ի ժամանակի մանկութեան իւրոյ, և երկրորդ նովին Պայլ զԿոստանդին Համշիրակ իւր։ Ըստ աւագութեանն անի էր Ատանի ունել և ընդարձակ մինակ տէրութեան՝ քան զայլ պարոնս. և այնպ հաւաստէ մեզ զայս Արքունի պատմիչ մեր, եթէ, «Էր » տէր քաղաքի բերդից և գաւառաց, 'ի Սելեւկիոյ մինչև » մերձ 'ի Կալօնօռոս, որ անուանի նորա կոչի մինչև ցայս» օր՝ Աշխարհ Սիր Ատանայ. և էր սա [illegible] » Սենեսկալ Հայոց»։ Հարկ էր և մեզ՝ որ հայկական տէրութեանց տեղագրաց, հաստատուն պահել զկոչումն այս 'ի վերայ ծովեզերացս՝ իբրև հայրենեաց աւանդ։ Բայց պատմչի մերոյ մինչև սահման, այսպէս ոչ հաւաստէ 'ի ներքոյ ձեռին Սիր Ատանայ լինել զԿալօնօռոս, սակայն և ոչ այլ ազգաց. այլ ըստ նորին պատմչի և հետեւողի իւրում Սմբատայ, 'ի նմին ժամանակի տէր տեղւոյս և այլոց ևս բերդից՝ էր Կիռ Վարդ, որոյ համ թոռն նորին Ատանայ, որում յայտ է թէ ինքնին ժառանգեցուցեալ էր զաներին՝ առ կենդանեաւն։ Իսկ յետ մահուան



119. Ալայա, մինայն, եւ աշտարակն.

իւրոյ (զրեթէ 'ի նմին ամի Լեւոնի) 'ի ժամանակի անդ վրդովման պետութեան Հայոց՝ յառաջ քան զԹագաւորելն Հեթմոյ, ժամ գիւտեալ եղեն Ալայէտտինի՝ նոր սուլտանացեալն Իկոնիոնի, «Էառ (ըստ Սմբատայ) զԱլա» յայ թոռնէն՝ 'ի Կիռ Վարդէն՝ զբերդն Կալօնօռոս, և » զգաւառ նորա 'ի կնութիւն՝ յոյ կալեալ. և վասն քրիս» տոնէութեանն՝ չհանգեաւ 'ի հետն՝ աղջիկն»։ Ցանկալի էր մանրապատում ևս աւանդութիւն գտանել զիրացս և հաւատալ՝ որպիսի ինչ էր յայնժամ շինուած Կալօնօռոս բերդի, որ ըստ յունական ձայնին թարգմանի Գեղեցիկ կամ Բարի լեռան։ Նա թէ նոյն է ընդ Ալայայ, հաւաստէ զայս համեմատութիւն բանից պարսից և թուրք պատմչաց ընդ մերայոցս. նոքա առեն վասն Ալայէտտինի՝ շինեալ առաստեր քաղաք յիւր անուն, յոր և կոչի ցարդ՝ կրճատմամբ եւաբին զուգորդի՝ րոկ Ալայա, ԱՇՅ, և անդ հաւաքեալ զիթերս զանձուց

գութիւնն սահմանել)։ Հաւանօրէն յառաջ քան զձեռն-արձակութիւն Ռուբինեանց՝ տիրէին Աստղենանք այսոցիկ կողմանց, որպէս համարինք իբրեանց Ալղղուրի-պեանքն՝ յերրորդումն բաժնի Ռոմայնոս Կիլիկիոյ՝ 'ի Տարոն և 'ի լեռնայինն սահմանան, և Հեթմեանք և Նաթանայէլեանք՝ Նոցին մերձաւորք և դաշնակիցք։ Արդ որ և երբ եղեալ իցէ ականցն տիրապետութեան Աստղեանց յայսմ մարզի, (յորում գան 'ի Կալօնօռոսէ՝ յիշին յանուանէ ընդ ձեռամբ Կիռ Վարդայ՝ բերդք Ա. Սոփէ, Ցուսոսայէ, Նաղլոն և Կոտրաս), սիրոյի իմն է նկատել զսերունդս Ասնեպերիսեայ նորեհայեալս 'ի հայրենայոյն Ռոստմէն իւրեանց և Աղթամարայ հրաշալերտիցն, և փոխանակ ընդ վան և վէրադ և ընդ կապուտակ ալիս լեռնապարոյր ծովուն Եղնուննեաց՝ զայսն բաժանելոյ, տառ 'ի կարկառակոյտ գագաթանց կառակիսեանն Կալօնօռոսի՝ ծաւալել զաչս և զմիտս ընդ համատարած ալիսս Միջերկրականին. — որպիսի՝ տեսութեանք. որպիսի՝ ըղձիւք։...

Միրձ 'ի սպառել պայազատութեան Ռուբինեանց, յամի իբր 1340, անուանի ուղևորն և աշխարհագիր արաբացի Իպն Պատուտա՝ եկեալ յԱլայա, ակնցն աշխարհին Ցանաց կոչէ զայն, և մի 'ի գեղեցկագոյն մասանց երկրի, ուր հաւաքեալ իցէ Աստուծոյ զզանազան վայելչութիւնս տեղեաց. գեղեցիկք են նմա և բնակիչքն և յոյժ



121. Բերդ Ալայայ.

մարդասիրաց, փափկակերք և բարեբարոյք. և առ ուստ անփոփանել համարի զառածն, թէ «Օրհնութիւն » յԱսորիս, բարութիւն յերկրին Հոռոմոց»։ Հիւրաւէրք և պատուադիրք՝ այրքն և կանայք, և սոքա անպարզք եւ։ Նորանշան իմն երևեցաւ ուղևորին առլորութիւն Ալայեցւոյ՝ յումն ասւր մի անգամ՝ եփել հաց, և պատրաստել զայլ ինչ կերակուրս. յաւուրն յայնմիկ բերէին նմա այրքն՝ ջերմիկ, առեալ, Այս քեզ 'ի կանանց ընծայ։ Ընդարձակ է, ասէ, քաղաքն՝ 'ի ծովեզերին, բնակեալ 'ի Թուրքմանաց, ուր գան վաճառականք յԱղեքսանդրիոյ, 'ի Գահիրէէ և յԱսորւոց. ունի մեծ վաճառս փայտի, զոր և տանին յԱղեքսանդրիա և 'ի Տամիաթ, և անտի յամենայն Եգիպտոս. 'ի վերին կողմն քաղաքին կայ բերդ ամուր և շքեղ, շինեալ յԱլայէտտին էր-Րումի (Հոռոմցի) սուլտանէ. գտանի անդ այն էր յայնժամ Ճէլալ Էդդինկայի, ընդ որում աղօթեաց 'ի բերդին. յետ և զՇէմսէտտին որդի Ալաէտտինհանի, որդւոյ Ալայէտտինի՝ մեռելոյ 'ի Միլլի. իսկ անէր կամ՝ սուլտան տեղւոյն՝ էր Եւսուֆ որդի Գարամանի. սորա աղարանք էին տասն մղոնաւ 'ի բացեայ 'ի ծովեզերեայ բլրի, ուր նստեալ էր,

և առ ոտս նորա կային ամբրայքն և վզրուկք, և զօրականն յաջմէ և յահեկէ. պատուեալ 'ի նմանէ և պարգեւեալ՝ մեկնեցաւ հեղինակն յԻտալիա։ — Զայսու ժամանակաւ և յառաջ և յետոյ ևս յաճախէին յԱյաս իտալացի վաճառականք, Վենետկեցիք, Գենուացիք, այլ և Կատալանք և Մայոլիկացիք[1] Սպանիոյ, և Լոմբարտացիք. 'ի սոցա յետնոցս անուն համարին զտեղիս զայս կոչեցեալ Լոմբարտաց Բերդ, Castrum Lombardum, Castello Lombardo, որ ոմանց անդրագոյն յարևելակողմն ուրեք թուի. այլ և Ռուպալտոյ անուն՝ յոր և կոչէրն՝ լոմպարտացի է, և հարկ է թէ երբեմն զբաւմբ ածեալ իցէ դոցա զտեղիս. որոյ և մզկիթ մի յայտնի եկեղեցի եղեալ զառաջինն. ցվերջ ԺԵ դարու յիշին իտալական անուանք բերդաքաղաքիս 'ի ծովացոյցս և 'ի գիրս, յայնմ հետէ ոչ։ Ցետին ձիգն սոցա եղև յամս 1471–3 'ի գրաւել զծովեզերքս և զօրացուցանել զԿարամանս ընդդէմ Օսմանեանց. այլ իբրև յաղթող գտան սոքա 'ի վերայ Պարսից՝ տեղի ետուն և դաշնակիցքն արևմտեայք։ Յայնժամ (1471) առաքեցաւ և անուանին Կէտիկ-Ահմէտ փաշայ նուաճել զԱյաս, ուր տիրէր Գըլըճ-Արսլան ոմն 'ի տոհմէ նախնի սուլտանաց Իկոնիոնի, որ և անձնատուր եղեալ և տարեալ առ սուլտանն Օսմանեան՝ ընկալաւ 'ի նմանէ տեղի բնակութեան, ուստի յետոյ և փախեաւ յԵգիպտոս. գերի վարեցան 'ի Կ. Պօլիս և երեքհարիւր բաղխտրաւորք, զորս Յակոբ Թագաւոր Կիպրոսի առաքեալ էր 'ի պաշտպանութիւն տեղւոյն.

Գեղադիտակ է նիստ քաղաքին, և օտարոտի իմն դիրք տանցն, կարգ կարգ մի զմիով ընդ հասակ քարալերինն, զոր նմանեցուցանէ ոմն 'ի նոր քննողաց՝ այծուց կուտելոց 'ի քարաժայռս[2], որք ամարանի հուր ցայտեն շողացեալք 'ի տապոյ արեգական, որպէս և 'ի ձմերանի ահեղ մրրիկք տագնապ հասուցանեն։ Չիք 'ի քաղաքին նշանաւոր ինչ շինուած, և բերդն գրեթէ աւերակ. երկու հրետս միայն տեսին 'ի նմա ուղևորք եւրոպացիք 'ի սկիզբն կոյս դարուս. մզկիթք սակաւաթիւք և փոքունք, բաց յայնմանէ՝ որ յեկեղեցւոյ փոխեալն է. պարիսպքն խարխարեալք՝ անարդիլ վիմօք կառուցեալ էին, որպէս և դուռն մի։ Տանիւ չափ տունք հաստատեալ են անդ զարդիւ՝ 'ի միջի մեծամեծ թզենեաց։ — Բնակիչք Այասայ են իբրև 1500 Թուրքք և 500 Յոյնք. այլ տեղին նստոց է փաշայի։ Առ նաւահանգստին կայ աշտարակ մի լայնակող ութանկիւնի Գըզըլ-գուլէ կոչեցեալ, 30 Զ. տրամագծաւ, և 30 Զ. բարձր, որպէս նշմարի 'ի պատկերսն (Թիւ 119, 121)։ Կայ և յիշատակ մի Այայէտտինի երկտող արաբացի արձանագիր ընդ կորնթացի խոյակաւ, յորում և քանդակք ծաղկանց և թևաւոր գլխոյ։ — Ի բերոց սահմանաց Այասայ յիշեցաք 'ի բնագրութեանս՝ ըստ միջին գրչաց մերոց զՄուզ կամ քիլէ պտուղ, զոր ասեն Բժշկարանք թէ « յԱյասոյ գայ »։ Նոր բուսաբանք յիշեն 'ի սահմանս Այասայ, հանդերձ այլովք զՈրթ արևելեան (Vitis Orientalis), տեսակս Ճլելեկի (Silene Oreades, S. Heldreichij), *Գաճի կպքուարոտակերպ (Gypsophila serpilloides), Կորնգան երկայնածաղիկ (Cerastium macranthum), Քռեկան կամ Իշկաթնուկ նեղտերևի (Lathyrus stenophyllus), Մրուանտակիկ բթաբլիթ (Valerianella obtusiloba), Ակրկարհա պտղաբեր (Pyrethrum fructiculosum), Կանթեղնիճ փռիւգացի, Խագիրան սպիտակարմիր, Գետնանոճ ալպեան (Chamæpeuce alpini), Խարի երկայնտերև (Alkanna macrophylla), Եզնագի նրբապտուղ (Verbascum stenocarpum), *Ծնուկ բամբակեայ (Ayuga bombycina), Փիլիպէա պնդապաճիճ (Philipæa axyloba), և այլն։

126. Երիւք մղոնօք 'ի հիւսիսոյ Այասայ 'ի կոնաձև բարձր բլրի կան աւերակք պարսպապատ քաղաքի, գեղեցիկ տաճարի միոյ, քանդակաց և արձանագրաց, յորոց ոչ ստուգեցաւ անունն. այլ համարի Լայերտ, Λαέρτης քաղաք, յորմէ հեղինակն Դիոգինէս. քանզի հին աշխարհագիրք՝ մերձ և 'ի հիւսիսոյ Կոռակեսիոնի ասեն զայն, և նկարագրութիւն Ստրաբոնի ընծայէ զնմանութիւն պտկաձև բլրին ուր աւերակքս են։ — Ի միջոցի սակաւ փարսախաց յելից Այասայ՝ ետես Պոֆորդ աւերակս ութ քաղաքաց և գիւղից, նմանս այնոցիկ որ յարևմտից նորին. գրեաթէ ամենայնն 'ի գլուխս տափարակ բլրոց, անօսր պարսպօք պատեալ. յոլովից կանգուն կային տունք, կարմրագոյն նկարէն զարդուք. և զի գեղեցիկ սրբատաշ վէմք ագուցեալք էին 'ի վարկպարագի հիւսուածս որմոցն՝ համարեցան 'ի վերայ հնագունից քաղաքաց շինեալք։ — Մի յայնցանէ տասն մղոնաւ չափ յելից Այասայ, 'ի վերայ բարձրագոյն և դժուարամատոյց բլեր, ըստ տեղաչափութեան հին աշխարհագրաց՝ կարծի զոլ Սիւեդրա կամ Սիւդրէ քաղաք, Σύεδρα, զորոյ անուն պահեն տակաւին Սետրա գետակ և գիւղ։ Օրհնութիւնաբեր ցուցակ մեր, այսինքն կարգաւորութիւն հին Մաշտոցի, նշանակէ վասն Կանոնի Աքեմարկէից, եթէ « Թէոդորոս եպիս-
» կոպոս Սիդարէ Պամփիլացւոց քաղաքին՝ է արարեալ,
» յառաջին ամին իւրոյ, հրամանաւ սրբոյն Անտոնի »։
Դոյզն, այլ պատուական մեզ հայրենի յիշատակ տեղւոյ և անձին՝ որք անծանօթ են օտարաց։ Բայց Սիւեդրա ճանաչի մի յեպիսկոպոսական թեմից նահանգին Պամփիւլիոյ. և եթէ տեղիս այս նշանակեալ արտաքոյ թուիցի Պամփիւլիոյ՝ ըստ մերս բաժանման և այլոց յոլովից, յիշելի է զի սահմանք երկոցուն աշխարհացդ՝ Պամփիւլիոյ և Կիլիկիոյ՝ ոչ են հաստատուն կամ համաձայն գիտնոց։

Ընդ մէջ երկոցուն համարեալ դրից քաղաքացս՝ Լայերտայ և Սիւեդրայ՝ նշանակին գետակք. առ բերանով միոյն Նաւլի գիւղ, զոր հին հեղինակ՝ 120 ասպարէզ հեռի ասէ 'ի Սելինտեայ, և աներկբայ համարիմ համանիշ Նաղլաւն գրեցելոյ բերդի կամ աւանի[3], որոյ տէր էր վերոյիշեալն Կիռ Վարդ. ընդ նմին ունելով ընդ ձեռամբ և զԱյժուտապ՝ ըստ գրելումն յարքունի պատմագրի մերում. նշանակեն և այժմու հմուտք առ երի (յելից կուսէ) յիշեցելոյ դրից Սիւեդրեայ լինել զաւերակս

1 Յամի 1300 յիշին աստանօր վաճառականք ոմանք Մայոլիկացիք, որք ունէին և նաւ մի Ս. Յովհան անուն, և բերէին վաճառս 'ի Կիպրոսէ։

2 Les petites maisons de bois grimpent le long de la pente escarpée, séparées par des ruelles parallèles: chaque rangée de toits sert de terrasses aux maisons de la file supérieure, et la ville s'étage ainsi, comme un troupeau de chèvres accrochées aux aspérités d'un roc. — Collignon.

3 Ի պատմութեան Սմբատայ Աղաւաղ տպագրեալ է։

Յուտապէ քաղաքի, Ἰωτάπη, որ և ըստ Նախնեաց մերձ էր Սելինունտեայ. գտանին դրամք քաղաքիս հատեալք յաւուրս Փիլիպպոսի և Վաղերիանու կայսերաց՝ ունելով գիր ΙΩΤΑΠΕΙΤΩΝ։ Համարի այսպէս կոչեցեալ քաղաքիս յանուն միոյ Յուտապէ դշխոյից, յորոց մի՝ որոյ է դրամն՝ Թիւ 122, քոյր և կին էր Դ Անտիոքոսի Թագաւորի Կոմագենաց (Եփրատացւոց). միւսն՝ դուստր սորա և կին Աղեքսանդրի որդւոյ Տիգրանայ՝ 'ի զարմէ Հերովդեանց, (ոչ գիտեմ որպիսի խնամութեամբ ընդ Հայոց ստացեալ զայս անուն). յետնոցս (Աղեքսանդրի և Յուտապեայ) տուեալ էր կայսերաց իշխանութիւն 'ի վերայ սահմանացս զոր տեղագրեմք[1]։ Ոմանք աստանօր կարծեն զվերոյիշեալ բերդն Լամբարտաց միջին դարուց. իսկ ըստ մեզ նշանաւորք են սոքա՝ Նաղլօն և Յուտապի (Ալժուտապ), իբրև արևմտագոյնք բերդորէից Հայոց Սիսուանայ։ — Ընդ երկոցուն այսոցիկ տիրէր Կիռ Վարդ և Ս. Սոփէ բերդի, որոյ խղպառ անծանօթ են ինձ դիրք, այլ գուշակի ոչ հեռի 'ի սահմանացս և 'ի Կալօնորոսէ։



122. Յուտապէ դշխոյ Եփրատացւոց.




123. Յուտապէ կրսեր և Աղեքսանդր որդի Տիգրանայ.

Առ յիշեալ տեղեաքդ Սիւեդրեայ և Յուտապեայ՝ անցանեն վտակք իջեալք յիմպարոս լերանց. առաջինն կոչի Տիմ-չայ, ըստ Չիհաչէֆի, երագասահ յոյժ, ունելով 'ի վերայ կամուրջ քարաշէն, և 'ի թիկանց գլեառնն Ճէպէլ-Ռէիզ, և 'ի ձորակին ոչ սակաւ մնացուածս վաղեմի շինուածոց 'ի վերայ բլրոց։ — Երկրորդ գետակն կոչի Թէսբէլ?-չայ. երրորդն՝ սակաւուք բացագոյն յարևելից կուսէ՝ այլ հզօրագոյն և լայնաձոր՝ Թէտէրէ-չայ կամ Քարքիձակ, որոց միջոց աւազուտ է և ծածկեալ նշխարօք վաղեմի շինուածոց։ Չորրորդ գետակ է արդ յիշեցեալն Սիւչարէ. յետ որոյ փոքր գետակ մի ևս անձուկ այլ ծաղկածին ձորով, առ որով յետին գիւղ Իչէլի գաւառի՝ Իմամլու կոչեցեալ. և յարևմտից նորա այլ գիւղ ծովեզերեայ՝ Տիւմայլան անուն։ — Յելից սոցա են գետակքն Գոչլագ կամ Տէյիձէ և Քիւյիւկ-չայ՝ անձուկ ձորակաւ, յորոյ 'ի մուտս՝ քարաժայռք են ասպնջականք հաւուց և արծուեաց։

Յետ սոցա կամ կից յետնոյս է գետակն Սելէնտի-սու, զի անցանէ առ համանուն գիւղիւ, կիսաժամաւ հեռի 'ի ծովափնէ, ուր կան աւերակք հնոյն Սելինոս, Σελινοῦς, քաղաքի, որոյ բնակիչք Սելինունդեանք կոչին 'ի դրամն, ΣΕΛΙΝΟΝΤΙΩΝ։ Կառուցեալ է յապառաժ հրուանդանի բարձու, կրելով 'ի գագաթան բերդ ահաւորահայեաց ուղղորդ 'ի վերայ ծովուն։ Արևմտեան ծայր քարաբլրոյն զատուցեալ է պարսպաւ, որ 'ի բերդէ անտի իջանէ 'ի բերան գետոյն, ունելով աշտարակս յանկիւնսն. անդր քան զպարիսպն են հետք տանց. 'ի հանդիպոյ և 'ի միջոցի բլրոտին և գետակին՝ մեծագոյն ևս շինուածք, որոց գլխաւոր է կամարայարկ մի քառակուսի իբր 70' երկայն, 50' լայն. անձուկ սանդուղք զուգահեռականք որմոցն հանեն 'ի կատարն տափարակ՝ յորում չկայ ինչ, բայց թուի երբեմն ունել միւս ևս յարկ 'ի վերայն, որոյ միայն մնան բեկորք փորածոյ սեանց։ Կայ առ երի այլ շինուած նորագոյն, և 'ի նմին մահարձան յիշատակի Քրիստոնէի ուրումն որդւոյ Հռեստոսի. են և այլ շիրիմք. և քառակուսի շինուած մի ևս իբր 235' տրամագծաւ, մերձ 'ի գետեզրն, յիւրաքանչիւր կողման ունելով չար երեանից սեանց խորտակելոց։ Դարձեալ երևին և մնացորդք թատեր, բաղանեաց, երկար ագուգայ որ անցեալ ընդ գետն ձգի 'ի բլուր մի. թերևս զի ոչ էր բաւական ջուր գետակին, և 'ի բացուստ բերէին զքաղցրահամն։ Ի դէպ է կարծել զմի յաւերակացս՝ յիշատականոց կամ մահարձան լինել Տրայիանու կայսեր, որ ըստ բազմաց աւանդութեան՝ մեռաւ 'ի քաղաքի աստ յամի տեառն 117, վասն որոյ և յիւր անուն կոչեցաւ Տրայիանուպօլիս, Trajanopolis. բայց յեկեղեցական վիճակագրութեան կոչէր տակաւին Սելինոս թեմ մի նահանգին Իսաւրիոյ կամ Պամփիւլիոյ։ Յայտ է թէ աճիւն կայսերն փոխադրեցաւ 'ի Հռովմ, և թաղեցաւ ընդ աշխարհածանօթ հոյակապ սեամբն կամ կոթողիւ՝ որ ցայսօր կանգուն կայ նորին անուամբ։ — Ի հովտի աստ Սելինոնտեայ են, յաջմէն՝ և գեօղքն Իքմէքչի-քէօյ, Մաձար-քէօյ և Պազարճըգ։ — Սահմանք սորա և նախայիշեալ գետակացն՝ ընդ մէջ կապուտակ ալեացն և սպիտակ և սեաւ կճափայլ լերանց Քարայնոյն Կիլիկիոյ՝ յոյժ զուարճագեղք են և քաջաբուսակք, մրտենեօք, եղջերենեօք, հերձեօք, սօսիւ, դափնեվարդիւ, կիտրոնիւ, նարընջենեօք, թզենեօք և արմաւենեօք իսկ, և զանազան մրգօք, մանաւանդ մեծահատ և մեղրահամ ողկուզաբեր այգեօք, յորս ճարակին հաւք և փասիանք. և 'ի միջի պարտիզացն և այգեաց ցրուեալ են տափարակ տնկունք. զորոց միանգամայն դիրս և գեղեցկութիւն՝ նմանեցուցանէ ոմն 'ի տեղաքննին գրողաց՝ զքանչելի Ամալֆեան ափանց Նէապօլսոյ։ Ոչ ինչ ընդհատ 'ի նմանէ հրաշանայր և զգօնն Պօֆորդ[2] յառաջնում տեսլեան Սելինոնտեայն, «'ի պարզութեան երեկորնոյ, որ
» և յաւելոյր զվայելչութիւն վայրացն. մինչև ցմեծ տա-
» րածութիւն կարէաք, ասէ, նշմարել զծովափունսն՝ ընդ
» որս հատեալ անցեալ էաք. դաշտն մանուածաւալ գե-
» տակօքն և աւերակօք՝ տարածեալ դնէր որպէս մագա-
» ղաթ առ ոտս մեր. և անդրագոյն՝ մեծակառոյց պար
» լերանց, որոց կողք թխորակք՝ թաքուցանելով զարե-
» գակն երեկոյին, զքանչելի իմն ընծայէին տեսարան

1 Visconti, *Iconographie Grecque*, III, 225.

2 Fr. Beaufort, Karamania, etc. 178–79.

» հակատիպ ձիւնագագաթն բարձամբքն. նշմարէաք որոշակի և զԿիպրոս կղզի՝ վերամբարձեալ ընդ հորաւային ոլորտս, թէպէտ և ոչ պակաս քան զեօթանասուն մղոն (անգղիական) 'ի բացեայ գոլով »: — Սա ինքն՝ 'ի հարաւոյ արևելից քարայլրին յոր կառուցեալ է քաղաքն Սելինոս՝ ետես բազում գերեզմանս յունարէն արձանօք, աւելի կամ նուազ քանդակօք, ոմանք կարմրագոյն և յոյժ հնաձև տաւիւք. գոյին և կամարայարկ դամբանք, և 'ի խորշս միոյն՝ կիսանդրի մարդոյ և առիւծ և 'ի մէջի արձանագիր. եգիտ և լատին մահարձան զՅուլիոսի Կելերի ուրուք և Յուլիայ Պախմիլլեայ և իւրոյ զարմին: — Են որք աստանօր համարին լինել զբազում անգամ յիշեալ բերդն Լոմբարտայ:

127. Մերձաւոր գետ և ձորակ յելից Սելինոսեայ է օժանդակ մի Տէլիճէ գետոյ, առ որով Քիձիկ? գիւղ, և 'ի հիւսիսոյ նորին Թէքքէլի գեօղ. իսկ յարևելից՝ բացագոյն Կիւնէ գիւղ, 25 կամ 30 տամբք, ըստ վերոյգրելոյդ նարնջենեօք և կիտրոնեօք վայելչացեալ, և աւերակօք վաղեմի շինից ստուերացեալ: — Մի յայսպիսեաց շինից և ընդարձակագոյն՝ կայ 'ի ծովեզերին, և հաւանօրէն աւերակն է Կրագեան Անտիոքայ քաղաքի, Ἀντιοχεία ἐπὶ Κράγῳ, Antiochia ad Cragum, զի վկայի իսկ 'ի նախնեաց լինել ընդ մէջ Սելինոսեայ և Քարադրեայ, յանուանեալ Կրագ, Κράγος, քարալերին 300′ բարձու. երևին յաւերակսն կարմիր որձաքար միաստանի սիւնք պաղպաջունք՝ 12′ բարձունք. ժայռ մի քառակուսի հարթ և ամբացեալ գագաթամբ կարկառի 'ի ծով. վիմափոր սանդուղք հանեն 'ի դուռն դղեկին. յայլում քարաժեռի կամարաձև գոգ գործեալ է և ջրանցք՝ իբրև 'ի պէտս նաւուց: Մինչև մերձ 'ի սկիզբն Թագաւորութեան Լևոնի՝ տակաւին 'ի ձեռս Յունաց էր քաղաքս այս, զոր Իտալացիք ժամանակին՝ նուազականաւ կոչեն Antiochetta, ապա էանց և մնաց 'ի ձեռս նորին. իշխան տեղւոյն էր յայնժամ Կիռ Սակ (Սահակ) Յոյն, (թերևս նման Սիր Ատանայ և Կիռ Վարդի), որ և տէր Մաղվայոյ և Սիկոյ: Առ սա եկեալ Գանաքի ոմն յելուզակ յոյն՝ խնդրեաց



124. Սելինուս = Տրայիանուպօլիս.

նաւ մի զինեալ, և նաւեալ 'ի Կիպրոս՝ կալաւ զթագուհին Լիւզինեանց և զորդիս նորա՝ մինչ բնակէին 'ի ծովեզերին՝ 'ի դարման առողջութեան, և եբեր յայս Անտիոք: Զայս լուեալ մերոյս Լևոնի՝ մահու սպառնալեօք ստիպեաց զԿիռ Սակ՝ առաքել վաղվաղակի զգերեալսն 'ի Կոռիկոս, ուր եկն և ինքն, և հրաւիրեաց զթագաւորն Ամաւրի՝ գալ առնուլ զդշխոյն: Մնաց քաղաքս այս 'ի ձեռս Հայոց գրեաթէ ցկէս ԺԴ դարու. թէ և յամի 1254 Խալամպէկ անուն խորանարնակ Թուրքման յԱղաչարի տոհմէ՝ աւերեաց « բազում տեղիս առ ստորոտով » լերինն Տաւրոսի, գերելով և հրկէզ առնելով. որ և » զգեղաքաղաքն Կրակկայն գերեցին և այրեցին. և յետ » սակաւ աւուրց ('ի մեռանել նորա) խաղաղացաւ եր-» կիրն այն լեռնային [1] «: Դարձեալ յետ սակաւ ամաց, այն է յամի 1258, « Թուրքման ոմն Սարում անուն ժո-» ղովեաց արս ոչ սակաւս, և եկեալ 'ի գեղաքաղաքն » Կրակկայն, և եգիտ զնոսա անպատրաստս, գերեաց » զբազումս և առեալ գնաց անվնաս. և յետ փոքր ժա-» մանակի սատակեցաւ [2] »: — Սանուտոյ՝ յիւրում ժամանակի (յառաջին քառորդի ԺԴ դարու), յԱնտիոքէ աստի ձգէ զսահմանս Հայոց մինչև յԱմանոս [3]: — Յիշեն հին աշխարհագիրք առ Կրագայ և զԱնտիկրագ, ոմանք աստ 'ի Կիլիկիա, այլ յոլովք 'ի Լիւկիա: Յիշի և 'ի մերոցս Ներքին Կրակա առ Պառատիս գետով, որ յոյժ հեռի 'ի վայրացս՝ 'ի վերին հովիտս Սարոսի թուի: — Ոչ ամենևին աներկբայ համարիմ և զԿրագդ Յունաց նոյն լինել ընդ Կրակկա գեղաքաղաքի մերոցս, զի այն սահման յաւէտ յունարնակ էր. իսկ 'ի գեղաքաղաքիս յիշի բնակութիւն Հայոց և յամի 1329, և եկեղեցի Ս. Միքայէլ, և մատեան մի գրեալ ընդ հովանեաւ նորին: Յետ այնր

1. 2 Արքունի պատմիչ Կիլիկիոյ:

3 Ըստ հին իտալերէն գրութեանն կամ թարգմանութեան գրոցն (Դ. Դ). Più oltra dal lado inverso tramontana dai confini dela terra del bon Re de Armenia, da una *so terra* la quale se chiama *Anthyogeia*, andando per la riviera de la Turchia, antigamente fo Grecia, rivolgendo fra in Aman, etc. — Sanudo.

(Κάραδρος, Charadrus), առ համանուն գետակաւ 'ի ծովեզրն, ամուր բերդիւ և նաւակայիւք. ծանօթ և հին տեղի, յիշեալ 'ի Հեկատեայ՝ վեց դարուք յառաջ քան զԹուական Փրկչին. Նշանաւոր է և անունն՝ ոչ յունական. զարդիս կոչի Քարադրան կամ Քալանտրան և պիտակաբար Գալէ-տէրէ: Ըստ հայաձայն կոչմանն՝ յոյժ քարուտ և ապառաժ են սահմանքն, այսպիսի վկայեալ և 'ի Ստրաբոնէ, որ և զվիճակս զայս կամ զծովեզերքս՝ կոչէ Պլատանիստոս, Πλατανιστοῦς, որ թարգմանի Սօսաւէտ: Ջեր գետակիս պատեն լերինք ապառաժք, որք կամ մերձաւորք նոցին՝ կոչէին 'ի հնումն Անդրիկլոս, Antriclus. Իտալացիք միջին դարուց զՔարադրն կոչէին Calandro և յաւելուածով Scalandro: Թէպէտ ոչ շատ ինչ ձեռակերտ երևի աստանօր և տունք սակաւաթիւք, այլ բնական ամրութիւնն բաւական էր նմին, և հարկ էր մի 'ի կարևոր ծովաբերդից համարել 'ի Թագաւորութեանն Լևոնի, սակայն ոչ յիշի այսպիսի անուամբ. բայց վկայէ ժամանակագիր ուղևորութեան Փիլիպպ. Օգոստեայ Թագաւորի Փռանկաց՝ յամի 1191, որ էանց ընդ կողմանքս, եթէ գետս այս Սկալանդրոյ՝ սահման հատանէր ընդ երկիրն Հայոց՝ կոչեցեալ յայնժամ Երկիր Ռուբինի Լեռնցոյ, և ընդ երկիր կայսերն Կ. Պօլսի [1]. և թէ յայսմ կողմանէ գետոյն՝ որ 'ի բաժնի Հայոց, առ ծովեզերբ էր բերդ մի Isanci, Իսանճի? (Եզանց?) կոչեցեալ, իսկ յայնմ կողմանէ՝ 'ի բաժնի Յունաց՝ Անտիոքեակն, որ յետ սակաւուց մարզ եկաց տէրութեան Լևոնի: — Երիւք կամ չորիւք մղոնօք յելից Քարադրի վտակ մի փոքր իջանէ 'ի ծով 'ի ծործորոց քարանձաւաց, առ որով Ուձարի գեօղ յ'340 Ձ. բարձու, յոյժ նկարագեղ դրիւք և հայեցուածով 'ի վերայ ծովուն՝ որ յառաջոյ հանդէպ Կիպրոսի, և խոժոռակերպ լերանց՝ որ 'ի Թիկանց ('ի հիւսիսոյ), որոց հանգոյն և ճանապարհն անհարթ է և քարուտ: — Ի սոյն սահմանս են և Քէվրազ և Նասրէտտին գեօղք. Թերևս մի 'ի սոցանէ ունիցի զբնավայր սոսիաւէտ չինին՝ յորմէ և վիճակն ողջոյն որ ընդ մէջ Քարադրի և Անեմուռի այնպէս կոչեցաւ:

127. Սահմանք Անեմուրի եւ Նագիդոսի.

Երկու փարսախաւ չափ յարևելից բերանոյ վերջին յիշեալ գետակի՝ կայ հռչակաւոր հրուանդանն Անեմուռ

fectum prosperum et votivum, quodque ad hoc per vos iuxta vestre facultatis suppetentiam sese ad id extenderit, salubris et utilis executionis opera impendatur, discretionem vestram attente requirimus, monemus et hortamur in domino Jhesu Christo vobis nichilominus iniungentes, quatenus si vobis visum fuerit, quod Castra possitis defendere supradicta, huiusmodi eorum donationem cum omnibus juribus et pertinentiis ipsorum liberam et perpetuam pro vobis et successoribus ac Hospitali vestris recipiatis a Rege predicto, ipsaque donatione recepta, et observatis super hoc illis juris solemnitatibus et cautelis, quas natura et conditio contractus dicte donationis hinc et inde fore observandum requireret, iamdicta Castra custodiatis, et ut vestra propria inhabitetis ac defendetis, ne ad manus eorumdem perveniant paganorum . . .

Datum Avinione IIII. Nonas Augusti, Pontificatus nostri Anno sextodecimo. — Epist. Johan. XXII.

1 *Scalandros* fluvius ille dividit terram Armeniorum, quæ est *Terra Rupini de la Muntaine*, a terra Imperatoris Constantinopolitani: et ibi ex una parte illius fluvii in terra prædicti Rupini secus mare est castellum quod dicitur *Isanci*, et ex altera parte fluvii illius in terra Imperatoris Constantinopolitani est castellum quod dicitur *Antiochet*. — Bernardus Petroburgensis.

կամ Անեմուրիոն, 'Ανεμούριον, զարգիս Անամուր կոչե-ցեալ, 31 մղոն հեռի 'ի Կելենդերայնէ: Այս ինքն է հա-րաւագոյն կէտ ցամաքանդակ երկրի փոքուն Ասիոյ, ընդ 36°, 0', 50'' աստիճանաւ լայնութեան, և ընդ 30°, 29', 55'' երկայնութեան (Բարիզու), և մերձագոյն 'ի (Կրոմմիոն աքր) Կիպրոս կղզւոյ. որոց երկոցուն կիտից՝ ըստ նախ-նեաց՝ 350 ասպարէզ է հեռաւորութիւն, այսինքն է՝ ի-բրև 70 քառամղոն, բայց ըստ արդեաց իբրև 80: Դրո-փանոբլեա ծայր հրուանդանին բուրգաձև գաւառի մի է բարձր, մի կողմն անմատոյց, միւսն կրէ բերդ ամուր և մարտկոցս 'ի պաշտպանութեան, յորմէ պարիսպ բրգակից ձգեալ 'ի ծովեզրն՝ անջրպետէ զանկիւն 'ի միացեալ մասնէ հրուանդանին. զուգահեռական նմին ձգի այլ պարիսպ անբուրգն՝ բայց 6' ստուար, և թուի յետ առաջ-նոյն շինեալ: Երկու ջրաբեր ազուգայք փորեալ են շուրջ զքարայրովն՝ քանի ինչ մղոն երկայնութեամբ, որք զոյգն որմածով և այլուր ըստ զրից երկրին 'ի վերայ կա-մարաց ձգեալ՝ անցանելով ընդ կիրճս: Ցամաքափակ պա-րըսպամիջին են ջրամբարք՝ լցեալք արդ փլածով հին շի-նուածոց. և 'ի մէջոցի կրկին պարսպացն են մեծամեծ կերտուածք, թատերք երկու, մին բաւական չէն մնացեալ՝ իբր 100' ընդ երկայնն և 70' լայն, շուրջ որմնափակ վեց կարգ նստարանաց, և թուի երգանոց. միւսն 200' տրա-մագծաւ, աւերական ձևով, մասամբ կարկառեալ ար-



128. Խարակք յափունս Անեմուրի.

տաքոյ գաւակի բլրին 'ի ծովն՝ 'ի հարաւոյ արևելից. սիւնքն ամենայն 'ի բաց բարձեալ են 'ի տեղւոյն, և հազիւ զոյգն ինչ նշմար գտանի. կարծէ Պոֆորդ ե-թէ տարեալ իցեն 'ի Կիպրոս: Իբրև վեց մղոնաւ յա-րևելից կայ բուն ծայր հրուանդանին, և միջնաբերդն կամ դղեակն 'ի վերայ փոքու քարաժեռի, զանազանա-ձև բրգամբ երկոտասանք շրջապատեալ, իբրև 800' ընդ եր-կայնն, 300' ընդ լայն. ժայռաձև կամ ժանեձև են կա-տարք պարսպացն և բրգանց. գոն ուրեք և բացուածք 'ի պատուարսն վասն հրետից, յայտ է թէ յետոյ գոր-ծեալք. երեք կամարակապ դրունք են, առաջն յարև-մտից կուսէ ընդ ստուար աշտարակաւ, և 'ի վերայն տախտակ վիմեղէն արաբացի արձանագրաւ, որ ծանու-ցանէ Ալայէտտինի նուաճեալ զբերդս ձեռամբ Թուման-Շէյրեթի և յանձնեալ 'ի պահ Լոմէր Մուստաֆայի: Ար-տաքոյ բերդապարսպին տարածանի ընդարձակ գերեզմանոց իբրև մեռելաքաղաք. զի կենդանեաց բնակարանք առ. ոչ ինչ իմն են առ գերեզմանացն, որք թէ և բացեալք և կործանեալք՝ կանգուն մնան տակաւին. և են մանր գամ-բանք զատուցեալք յիրերաց, զրեթէ նոյնաչափք, այլ ոչ նոյնաձևք, կամարակապք, գաւիթ և կարմիր խար-տեալ ագիւսով զանգեալք. իւրաքանչիւր 'ի գամբանաց

ունի այլևայլ առանձնակ դիրս դիականց, և արտաքոյ խորշս վասն նուիրաց կամ աճիւնակիր սափորոց․ խորանքն քաջ դրուագեալ են գանճիւ՝ պատուածաձև զարդուք․ այլ արձանագիր բնաւ ոչ գտաւ 'ի սոսին։ Երևին և հետք հնոյ քաղաքին 'ի բուն 'ի սպառուած հրուանդանին, զոր Թուրքք կոչեն Էսկի-Անամուռ։ Ի ստորև բերդին կղզեակ մի է փոքրիկ 'ի ծովուն, նուազ քան զ'200' յերկայնութիւն, յորում երևին հետք շինուածոց և ջրամբարք վիմափորք։ — Առ պայազատութեամբ Լևոնի՝ մի յաւագագոյն պարոնայցն՝ Հալկամ՝ էր տէր Անեմուռի, որ և այլոց երևելի բերդորէից, այսինքն՝ Լամոսի, Ճեռմանկանն և Մանիօնին․ զկնի մահուան Թագաւորին՝ 'ի ճահ գայ Ալայէտտին սուլտանի գրաւելն զԱնեմուռ և զԱլայա․ բայց երևի յետ ոչ սակաւ ժամանակի միւսանգամ անկեալ 'ի ձեռս Հայոց, և նշանակեալ հակիրճ բանիւ ժամանակագրի, 'ի Թուին ՉԼԳ (1284), որ է առ Բ Լևոնիւ, «Եղև Թափումն Անամուռին՝ 'ի Թուրքաց»․ կարևոր դէպք, որոյ որպէսն տակաւին անյայտ մնայ առ 'ի չգոյէ պատմութեան և յիշատակաց ժամանակին։ — Զարդիս զատ 'ի Թուրքաց իբրև հարիւր մի Յունաց բնակեն յԱնեմուռ։ Ի դիւանս Օսմանեանց՝ կոչի սա և Մամուրիէ․ իսկ Իտալացիք միջին դարուց կոչէին Ստալիմորէ, Stalimore․ գրիչ վարուց Ենրիկոսի Բ Անգղիոյ Թագաւորի՝ գրէ Stamene, Ստամենէ, և յամի 1191 ասէ լինել անդ երևելի վանս Յունաց [1]։ — Նոյն հեղինակ ընդ մէջ Անամուռի և Քարադրի յիշէ զՌոտոյ բերդ աւերակ [2]։ — Յամայացեալ սահմանս հրաշակերտ շինուածոցն՝ նշանակեցին բնագէտք ազգս ազգս գեղեցիկ և հասարակ բուսոց, յորոց սակի են Անթեմն կամ Խնձորխոտ պամփիւլիացի, Կանթեղնիճ փռիւգիացի (Campanula phrygia), Քոսքսուկ Թաւարծի (Scabiosa hispidula), Փլոմիս գծատերև (Phlomis linearifolia), Զարոշ Քոչեայ (Teucrium Kotschij), Դափնէ կնիդիացի (Daphne gnidioides), *Երկաթբուժակ խտացեալ (Sideritis condensata), Ջամբուռ կիլիկեցի (Thymus cilicicus), Ընձենի լերկ (Scorzonera glabra), Կտրածի խոտ յունական և Երուսաղեմեան (Galium Græcum, G. Hierosolymitanum), Խստոր Ոլիմպեան (Allium Olympium), *Ոլոմբի Լարանդեան (Ballota Larendana), և այլն։

Յերի բերդին Անեմուռի է բերան համանուն գետոյն, 150' լայն, զոր Պոֆորդ ասէ կոչել Թուրքաց Տիրկ-օնտեսի? և ոչ կարէ ստուգաբանել զյետին բառն, որպէս և մեք, զի սխալ իմն է, այլ առաջինն Թերևս տերէ (ձոր) ընթեռնլի․ բայց յայլում քարտի գրի Քեօփրիւճէ չայ։ — Առ նովաւ է Զօրաք գիւղ, զոր վասն բնակութեանն 'ի Յունաց՝ Կեավուռ-քէօյ կոչեն Թուրքք․ — 'ի ստորև մերձ 'ի հրուանդանն է Զարտագ․ յարևմտակողմն հովտին՝ Գայվիրէ? գիւղ 'ի լեռնոտին, և անդրագոյն ևս Գըլըգլիսէ․ յարևելակողմն՝ Պազչէ?, Իմէզէր, և 'ի հիւսիսոյ սոցա առ գետեզերբն բերդ մի։

128․ Երկու մղոնաւ հեռի յԱնեմուռ բերդէ ընդ արևելս՝ 'ի գագաթան բլրի տեսան աւերակք քաղաքի, զոր Պոֆորդ ասէ կարծեաք լինել Նագիդոս [3] քաղաք յիշեալ 'ի Ստրաբոնէ, Νάγιδος, 'ի Սամիացւոց կառուցեալ․ յանուն նորին կոչէր և կղզեակ մի, Նագիդուսա, Nagidusa, որ Թուի խարակն՝ 200' հեռի 'ի ծովափանց, և մերձ յԱնեմուռ։ Հին աշխարհագիրն զՆագիդոս ասէ լինել դէպ ուղիղ հանդէպ Լապաթոս քաղաքի Կիպրոսի [4]։ Յառաջ քան զժամանակս Աղեքսանդրի մի 'ի նշանաւոր քաղաքաց ծովափանցս Կիլիկիոյ եղեալ գուշակի Նագիդոս՝ 'ի դրամոց սատրապացն Պարսից հատելոց 'ի նմին, յորոց սակի է արծաթի դրամս այս։ — Նոյն աշխարհագիր (Ստրաբոն) 'ի միջոցի Անամուռի և Կելենտերեայ կարգէ երկուս ևս քաղաքս, զԱրսինոյէ փոքրիկ նաւակայիւք, և զՄելանիա, Μέλανια․ յետինս կարծի յոմանց Գըզ-լիման, կամ անդր քան զայն, 25 մղոնաւ յարևելից Անեմուռի․ կոչէր և Մելենէ, Μέλαιναι․ ունի և նաւակայս փոքունց նաւուց, հայելով ընդ հարաւ կոյս [5]։ — Երկու գետակք ևս են յայսմ յիշեալ միջոցի, մին փոքրիկ յոյժ, միւսն հզօրագոյն և խորագոյն յարևելից կողմանէ՝ Սօֆդա-չայ կամ Սիկի-չայ կոչեցեալ, և կամ Սարչու-չայ․ Թերևս սա կամ գետն Անեմուռի իցէ Արիմակդոսն նախնեաց։ Ի վերին կողմանս ձորոյ գետոյն են գեօղք Զագլար կամ Սագլար?, Հաճի-Պայամտուր եայլասի, Կիւլէփաք կամ Կիւլէվիք, Գարա-գիլլի․ 'ի ստորև՝ Պիտոյի գիւղ, և Մեծ և Փոքր Սօֆդա գեօղք, և յերկոցուն միջի յահեկէ գետոյն (յարևելից) 'ի բարձուլերին՝ Սօֆդա գալէսի բերդ աւերակ, որակամար դրամբք մերձաւոր գոթացի ոճոյ, հնգեքումբ աշտարակօք։ Սա իցէ Թերևս բերդն Սիկոյ, Σύκη, Syce կամ Sycæ, 'ի միջին դարս Sequino կամ Sequin կամ Sigi կոչեցեալ յԻտալացւոց․ սմին ևս առ Լևոնիւ՝ վերոյիշեալ Կիռ Սակն (Սահակ) տիրէր, այն որ գերեցաւ 'ի պաշարման Կապանոյ 'ի սուլտանէն Իկոնիոյ։ Յերկարագոյն մնացեալ զսա 'ի ձեռս Հայոց՝ տեսաք 'ի կոնդակէ Քահանայապետին Յովհաննու ԻԲ, ցամն 1332, զուգաբաղդ գտեալ Կրագեանն Անտիոքայ։ Յիշի յամի 1265 անուանի զունդստաբլն Սմբատ եղբայր Ա Հեթմոյ տիրել նմին և այլոց մերձակայից։ Թուի ինձ Թէ այս Սիկոյ բերդն է և



129․ Դրամ պարսիկ կողմնակալի Նագիդոսի․

1 . . . Villam bonam quæ dicitur *Stamene*, in qua nobilis abbatia est Grifonorum.

2 Castellum desertum quod dicitur Castellum *de Roto*.

3 Պոֆորդ՝ Agidus գրէ վրիպակաւ։ — Ի նմանութենէ անուանցն Նագիդոս և Մագիդոս, մարթ էր նոյն և մի կարծել, մանաւանդ զի ոչ զերկոսին միանգամայն յիշեն աշխարհագիրք, այլ ոմանք զայս և ոմանք զայն․ սակայն որոշակի գրոշմած M և N տառից 'ի դրամս, և գիրք տեղեաց՝ զոր նշանակեն, միոյն ատ մերձ յԱնեմուռ, և միւսոյն բացագոյն յարևմուտս՝ մերձ 'ի Սիդէ և յԱտալիա, երկուս և ինձ հաւանեցուցանեն լինել որիշ քաղաքս։

4 Λάπαθος... καθ' ἣν ἡ Νάγιδος. — Strabo, XIV. VI.

5 Գուրդիվրոն, Courtivron, 40։

գրեալն Nessekim 'ի վարս Ենրիկոսի Բ Թագաւորին Անգղիոյ, ընդ որ էանց Փիլիպ· Օգոստոս Թագաւոր Փռանկաց, 'ի խաղալն 'ի Սելեւկիոյ յԱտալիա. զի յետ այնր յիշի իշխանն Ստամենէ, որ է Անեմուռն։ Անուանի եղև տեղիս և հարիւր ամաւ յետ բարձման Թագաւորութեան Հայոց, 'ի դէպս պատերազմաց Գարամաննեանց և նիզակակցաց նոցին Վենետաց ընդ Օսմանեանս. 'ի ժամանակի պաշարման Կոռիկոսի պաշարեցին և զսա Վենետկեցիք, մերձեալք 'ի ծովեզրն վաթսուն բերդանաւուք, և Թափեալ 'ի ցամաք չորեքհարիւր և քառասուն ձիաւորս հանդերձ արբանեկօք նոցին. որք գտին զտեղին ամուր յոյժ 'ի կատար լեռնաբլրի, այլ պահապանս սակաւաւորս 'ի նմին, որպէս թէ արս քսանևհինգ. Գարամանն զօրավար կարգեալ էր իւրոցն զԹեմինկա? ոմն. բերդապահն Մուստաֆա որ բնիկ գարամանցի էր, կամեցաւ անձնատուր լինել. գնաց առ նա խօսել Յովսափատ Պարպարոյ հռչակաւոր դեսպանն և ուղէգիր՝ 'ի դուռն բերդին, յորոյ վերայ կայր պատուհան քառակուսի. և իբրև խոստացաւ թողուլ բերդականացն ազատօրէն ելանել ընչիւք իւրեանց, բացաւ նմա դուռնն. և ելին որք 'ի բերդին՝ ոգիք իբրև հարիւր և՝ յիսուն՝ կանհիւ և աղխիւ իւրեանց, զորս կողոպտեցին և գերեցին անհրահանգ և անհնազանդ նաւաստիք, բայց հրամանատարքն անդրէն յետս դարձուցին զաւարն առ տեարսն, և նաւուք իւրեանց տարան ուր կամեցանն. իսկ զՄուստաֆա՝ երկոքեան եղբարք նորա աղաչեցին ելանել 'ի ցամաք, և դաւաճանութեամբ սպանին. քանզի գրաւեալ էր նորա զամենայն ստացուածս հօրն իւրեանց, որ էր բազում յոյժ։ — Թերևս այս տեղի է 'ի նոր ուղևորէ առանց անուան նշանակեալ բերդ աւերակ՝ քանի մի ժամուք հեռի յԱնեմուռէ. 'ի Սէլճուկեանց շինեալ, ըստ նորա կարծեաց, իբր քաղաք մի փոքրիկ և քաջ ամուր, մզկթաւ, օթեվանօք, և այլն, ոչ հանդիպահայեաց՝ այլ խոտորնակի դրամբք, ըստ օրինի պաշտպանութեան ամրոցաց [1]։ — Սակաւուք հեռի աստի ընդ արևելս ամբառնայ ցամաքակղզեակ մի լի աւերակօք հին շինուածոց, հաւանօրէն




130. Մելանիա. 1/14 կամ 15,000.

նախայիշեալ Մելանիայն Ստրաբոնի, զոր ոչ իշխեաց Պոֆորդ քննել, վասն թշնամօրէն հայելոյ բնակչաց մօտակայ գեղջն։

Սակաւ մղոնօք յելից հարաւոյ սորին կարկառի 'ի ծով երկայնաձև գեղեցիկ հրուանդան ուղղորդ սեպացեալ, թխագոյն խաւիխաւոյ կրաքարուտ քարաժեռիւք, և կոչի Գզըլ-լիման, ըստ ոմանց Գըզ-լիման. 'ի հնումն կոչէր Պոսիդիոն, Ποσείδιον։ – Աստի ցկելենտերիս՝ ծովեզերքն բարձրադիր ապառաժք են, ձորակս անձուկս ունելով 'ի ցամաքի, յորս խրճիթք նաւազունք։ Ցամաքակղզեակ մի է յելից հրուանդանին քաղաքորմով շուրջ պատեալ, և 'ի միջին աւերակք ոչ հնագոյնք. 'ի միոյ կողմանէ փոքրիկ բոլորակ խորշ մի ծովու, 'ի միւսոյ՝ մնացուածք ամբարտակի. 'ի ցամաքին դամբանք նմանք Անեմուռայն և այլ ինչ հին շինուածոց մնացորդք [2]. Պոֆորդ կարծէ աստանօր լինել զՄելանիա, այլ թերևս դիպողագոյն իցէ լինել Մանդանեայ կամ Միւանդեայ, որ եօթն ասպարիզաւ յարևելից կայ Պոսիդիոնի առ 'ի Նախնեաց, Μανδάνη։ Ջարդիս գեօղ մի է առ երի՝ Ագ-սազ կոչեցեալ։ — Յելից կուսէ գեղջս և փոքր գոգոյ ծովուն՝ են մուտք գետա-

1 À quelques heures d'Anemours, nous laissons sur la droite les belles ruines d'un château turc, de l'époque Seldjoukide : à l'intérieur, c'est une véritable petite ville ; rien n'y manque, ni la mosquée, ni le konak, ni le harem et ses vastes dépendances. Les murs épais et crénelés, les portes disposées obliquement, pour éviter toute surprise et mettre l'assaillant à découvert, montrent un savant appareil de défense. — COLLIGNON.

2 Պոֆորդ, BEAUFORT, 200։

կի միոյ Մուզ-սու կոչեցելոյ (Ցուրտ Ջուր), և ըստ անուանն սառ յատակ և զով ունել ջուր. առ եզերբք ձորակին և ծովուն՝ երևին ոչ սակաւ աւերակք մինչև զարուց շինածք. և հոյին արդ յանուն գետոյն։ Մարթ է կարծել 'ի մերձաւորութենէն՝ այսպէս եղծեալ Թուրքաց զանուն Միկոյ, և զանեղի աւերակացս իսկ լինել զանուանեալն այն բերդ։

Սահմանաւ 'ի բացեայ յերից վտակին՝ է փոքր այլ անուանի նաւահանգիստն Քելէնտրէ կամ Ջիլինտրէ, (Chelindreh ըստ Փռանկաց), զի առաւ նաւէն Թղթատարք Կ. Պօլսի 'ի Կիպրոս. նոյին անուամբ կոչէր 'ի Հնումն Կելենդերիս, Κελένδερις. և աւանդի յունաց՝ Սանդակայ որդւոյ փիւնիկեցւոյ՝ որդւոյ Աստինոսի՝ շինեալ զսա, այսպէս Սամիացւոց գաղթականաց. և էր անուանի վասն մեհենի դիցուհւոյն Հերայ. հին դրամք նորին յայտ առնեն զի երբեմն ազատօրէն վարէր քաղաքն և երբեմն հպատակէր Ասորւոց Թագաւորաց, և ապա



131. Դրամ Կելենդերիս քաղաքի.

Հռովմայեցւոց. առ որովք Կնէոս Պիսոն դաւաճանութեամբ սպանանել տուեալ զԳերմանիկոս՝ ապաստանեցաւ այսր, և պաշարեցաւ 'ի հաւատարմաց սպանելոյն.



132. Կելենդերիս.

որոց վանեալ զկիլիկեցի գունդ ապստամբին՝ եկին մինչև 'ի բերդն, և առիւեցին անձնատուր լինել։ Ցանուն քաղաքին կոչեցաւ և վիճակն 'ի Լատինաց Կելենդերեան, Celenderitis։ Ի քրիստոնէական վիճակագրութեան՝ առաջին գասի 'ի Թեմս արքեպիսկոպոսութեան Սելևկիոյ Պամփիւլեայց։ — Ի հին շինուածոյն մնան սակաւ ինչ 'ի քաղաքին, և բերդ մի աւերակ, յորում վեցանկիւնի բուրգն չորիւք կողմնթացի անկեալք, 'ի միջոյն հերձեալ՝ որպէս թէ 'ի սասանութենէ երկրի. 'ի միում կողման քաղաքին վայելուչ կամարայարկք են, 'ի միւսում՝ գամբարք, և շիրիմք եղծեալ արձանագրոք. մերձ 'ի ծովափն գամբան մի մեծ՝ առաւ և անուռ կամարս ունելով բարձրաբերձ բրգամէն գմբեթի, մեծամեծ վէմք զուգելոյ, ընդ որով թուի թէ կայր անդրի կանգնեալ։ Ցողովագոյն մասն աւերակացն հռոմէական շինուածոց է, սակաւ ինչ և բիւզանդական, որք ծածկեն զոլորտս զոգոյ նաւահանգիստ և զժամն մի հրատանդամենին։ Թուրքք այժմ Կիւլնար կոչեն զանեղիս զայս՝ երբեմն յայտ բարգաւաճ. իսկ յայժմուս՝ յամի 1815՝ Քինիերյր Անգղիացի՝ հազիւ չորք կամ հինգ հիւղս Թուրքաց աւեր լինել. բայց 'ի մթերանոցի ուրեք վաճառուց՝ որ և մաքսատուն՝ եօտս բազում Հայ վաճառականս՝ սպասելով նաւու՝ անցանել 'ի Կիպրոս։ — Ի հիւսիսոյ

կելենդերեայ յանձուկ ձորակին են գեօղք ինչ՝ անուանեալք՝ Գուլղուրլու, Պայամտուրլու, և վերագոյն 'ի լեռնակողմանս՝ Ալիպաշ, Զօղուշմուր կամ Շահուշմուր, Պէրեքեթ. դարձեալ, յարևմտից հիւսիսոյ 'ի վերայ ճանապարհին որ տանի յէրմէնէկ՝ յիշին գեօղքն Գուրտուլու, Հաճի-պասրա, Տրուհան?, Կեօզէնտի?, և այլն։ Իսկ 'ի հանդիպոյ ծովուն՝ են երեք կղզեակք մանունք. Թերևս մի յայնցանէ իցէ նշանակեալն Ձիթենեաց կղզի 'ի Սանուտոյէ, Insula Olivarum. երկու ևս բացագոյն յարևելս՝ Բաբատուլա կոչեցեալք, որ նշանակէ Թիթռանց կղզի. մի 'ի սոցանէ կարի բարձր է, և ժայռ մի մեծ 'ի գագաթանէն կարկառեալ 'ի ծով. են 'ի նոսին մնացուածք կամարաց և այլ ինչ շինուածոց։ Անբնակս 'ի մարդկանէ և անծանօթս յաշխարհագրաց ասէ զոսա Պօֆորդ՝ որ քննեացն յամի 1812, և միայն արծուիս եգիտ բունեալս 'ի ծերպս քարանցն, և չրտուցեալ 'ի ձայնէ նաւազինն սաւառնեալ յօդս 'ի վերոյ նաւուցն։ Իտալական ծովացոյց մի միջին դարուց նշանակէ զայն Papadorah անուամբ, և ուղղագոյնս Papadula. իսկ արքունի պատմիչ մեր անդստին յԺԳ դարէ ճանաչէ զայն Պապատօլ անուամբ, որում իշխէր մեծ գունդստապլն Սմբատ՝ 'ի վերջին ամս թագաւորութեան եղբօր իւրոյ Հեթմոյ։ — Հանդէպ կղզեկացն 'ի ծովեզերին՝ առ փոքու վտակաւ կայ և հանգրուան մի սակաւատուն նովին Բաբատուլա անուամբ։ — Մերձաւոր սմին անուամբ և մերձագոյն ևս Կելենտերեայ՝ (նոյն համարելով և ընդ սմին իսկ հին քաղաքի), նշանակէ իտալական միջինդարեան ծովացոյցն՝ զՊալիոքոլի, կամ լաւ ևս ասելի Պալէապօլիս Παλαιάπολις, որ նշանակէ Հին քաղաք, որպէս և նշանակի յեկեղեցական վիճակագրութեան Պամփիւլիոյ նահանգի. բայց համանուն տեղի ծանօթ մերայոց՝ տեարց գետահովտին Կալիւկադնոսի՝ ցուցաք զՊալապօլ 'ի գաւառին Սելեւկիոյ (յէջ 289)։ — Ցայսմ կողման նշանակի 'ի ծովացոյցս և Ֆիկերոյ նաւակայան, Porto Figuero, (Թզենեաց [1] նաւահանգիստ), զոր ժամաչափ մի միայն յարևելս Կելենտերեայ՝ գրէ Օլիվիէ ուղևոր, եկեալ այսր յամի 1798։ — Բոլանդակ ծովեզրն որ աստի ցանուանի հրուանդանն Զեփիւռիոն՝ յոյժ ապառաժ է, կրաքարուտ և անմարդի. բայց 'ի կռանն են և ձորակք փոքրիկ վտակօք և հեղեղատօք, և անտառք ոչ սակաւք, յորոց և փայտ հատանեն՝ 'ի վաճառ առաքելով յԱսորիս և յԵգիպտոս։ Ի միջոցի աստ 'ի դէպ է խնդրել զնշանակեալն 'ի նախնի աշխարհագրաց՝ զԾոց Բերենիկեայ, Βερενίκης, Sinus Berenices, Թերևս նոյն ընդ Ֆիկերոյ նաւակայից. զԿրամբուսա Κράμβουσα, որ յիսուն ասպարիզօք յեկից կուսէ Բերենիկեայ գրի. գրեթէ նոյնչափ հեռի 'ի նմանէ և հրուանդանն Կռաւնի, Κραῦνοι. — Ափրոդիտեան հրուանդան, 'Αφροδισιάς, յանուն Ափրոդիտեայ կամ Աստղկան դից, որոյ էր տաճար 'ի նմին. և տեղին համարէր հինգ հարիւր ասպարիզօք բացակայ յԱւլիոն հրուանդանէ Կիպրոս կղզւոյ. Թուի սա առ փոքր գոգով ծովուն՝ ուր երևեցան մնացուածք ցիր դերբկաց և սեանց՝ նշանակք հնոյ քաղաքի, մերձ յանուանի հրուանդանն՝ որ ընդ մէջ է կղզեաց Պապատօլի և այլ կղզւոյ 'ի հարաւոյ արևմտից ծոցոյն Սելեւկիոյ։

129. Հրուանդանս այս 'ի հնումն կոչէր Զեփիւռիոն, Ζεφύριον, և է վերջին հրուանդանից հարաւագոյն ծովեզերաց Կիլիկիոյ, որք աստուստ դառնան ընդ արևելս հիւսիսոյ. և են պարեխք սպիտակափայլ կնոյ 6-700′ բարձունք, նորանշան իմն կազմուածով հորիզոնական խաւուց, որք գործեն ցամաքակղզի մի մեծ, յամենայն դիւրամատոյց կողմանց պարսպով պատեալ, որ 'ի ցամաքին կողմն ևս թուի երբեմն ունել պարկէն փոսոյ. իբրև 365 Զ. է լայնութեան պարանոցին, երկուստեք ունելով ծանծաղուտս կցորդեալս ընդ ծովու՝ սալարկեալ ամբարտակօք, և թուին յարդարեալք՝ առ ողողումն 'ի ժամանակի պատերազմի և պաշարման. յարևմտակողմն տեսաւ յարկածածուկ նաւակայան, և առ երի դափնի թուփք (bay trees), որք միշտ առ աւերակօք կողմանցս երևին. բայց զերեսս ցամաքակղզւոյն ոչ ժամանեաց քննել Պօֆորդ։ Ի միջին դարուց հետէ ցարդ յիտալացւոց և յայլոց արևմտեայց Capo Cavaliere կոչի հրուանդանս այս, և կարծեցաւ այսպէս կոչիլ, իբրու երբեմն Ասպետաց (ձիաւորաց) կայան եղեալ կղզեկին՝ որ յարևելից կուսէ հրուանդանին կայ, իբր 4 1/2 մղոնաւ բացագոյն, և երկու մղոնաչափ երկայն, և նոյնպէս կոչի Կղզի կամ Նաւահանգիստ Ձիաւորաց, Porto Cavaliere. և կարծեմ սա է որ 'ի Թուրքաց կոչի Տանա-ատասը (Հորթու կղզի)։ — Սակաւ մղոնօք հեռագոյն 'ի Հս. Եւ. կայ այլ կղզի բարձրագոյն և քարաժայռ վախուտ 'ի ծովակողմն, այլ 'ի ցամաքին կոյս հօծեալ աւերակօք բնակարանաց, եկեղեցեաց, չիրմաց և սեանց, և մեծի շինուածոյ միոյ՝ որ թուեցաւ կռուանոց. 'ի բարձրագոյն գագաթան քարաժեռից կայկայեալ է դղեակն, և յամենայն կողմանս կղզւոյն լի են բնական և ձեռագործ ամրոցք, նշանակք մեծի զինուորական կայանի և բազմամբոխ բնակութեան, յորոց պէտս փորեալ են և ջրամբարք. իսպառ անբնակ է զարդիս։ Մերձակայ բնակիչք Մանավադ կոչեն զկղզին, իսկ արևմտեայք ճանաչեն Պրովենցալ անուամբ, Isola Provenzale, կամ Scojo (Պարեխ) Provenzal, որպէս և հանդիպակայ ցամաքն Նաւահանգիստ Պրովենցալ, Porto Provenzale. և այս ամենայն ցուցանէ զտեղիքս՝ կայանս և նաւամատոյցս եղեալ առ պայազատութեամբ մերայոցս՝ վաճառականացն Մոնբէլիէի և այլոց Փռանկաց Բրովանս նահանգի նոցին, առ որս զտանին շնորհեալ պարգևագիրք Լեւոնի Դ՝ 'ի սկիզբն թագաւորութեան իւրոյ, յամի 1321, ըստ օրինակի տուեցելոցն 'ի հօրէ իւրմէ Օշնէ, որոց պատճէն կորուսեալ է. և հաւանօրէն սորայս հաստատութիւն էր տուեցելոցն 'ի նախորդաց իւրոց. Փռանկք կոչէին զտեղիս Le Provensal, կամ Ile Provençale, և լատիներէն Portus Pordensalium։ Ի սոսա ակնարկէ Գրիգոր Տղայ կաթողիկոս մեր յողբս Երուսաղեմի, յիշելով զի չեկին սմա յօգնութիւն՝ և

« Ոչ թագաւորն Յունականին
Եւ ոչ իմ զօրքըն Ֆռանգիսին...

[1] Զնոյն նշանակելով և Սիկոյ, Σῦκον, Թուզ, ըստ յոյն լեզուի, մարթ է նորին միոյ տեղւոյ երկակի կոչիլ յիտալացւոց ծովագրաց։

« Ուչ Պիտովընցալն եւ Վընեցին...
Եւ ոչ Կոստանն եւ Լիմուզին [1] »։

Ցոլովութիւն մատրանց 'ի կղզւոջս փաստս յաւելուր կարծեցողացն՝ բնակութիւն Ասպետաց Հռոդացւոց լինելոյ երբեմն սորին։ Փոխանակ մարդկան տեսանի արդ բազմութիւն ջրային հաւուց բունելոց 'ի ծերպս վիմացն, մանաւանդ մեծամեծ գեղեցիկ սպիտակագոյն բադից՝ նարընջագոյն և թուխ պխակօք, որք դժուարորսալիք են, այլ յոլովութիւն ձուոց նոցին լնու զփափաք նաւազին. այս ազգ բադից յայսմ կողման միայն գտանի, ըստ Պոֆորդի, որ նշանական իմն զայս առէ, զի թէպէտ և յամենայն ծովեզերքս բազում ազգք են հաւուց, այլ իւրաքանչիւր տեսակ՝ առանձնակ ունի կայան. կարմրասրուն կաքաւք ոչ անցանեն այսր քան զԱտալիա. ծերպք Կելենտերեայ ասպնջական են աղաւնեաց. անտի և այսր ժայռք բոյնք են արծուեաց։ Ցաւէ զի այսպիսւոյ նշանաւոր տեղւոյ, որ էր աներկբայապէս եղեալ ընդ հզօր ձեռամբ Լեւոնի, ոչ յայտնի հայերէն անուն կամ յիշատակ, և ոչ կարծեմ թէ իցէ մի յանծանօթիցն բերդորէից՝ 'ի թիւ անկելոց առ Թագադրութեամբ նորին։

Ի Պրովէնցալ կղզւոյ աստի և անդր ընդ հիւսիս առեւելից՝ ծովափունքն հերձեալ են 'ի փոքրիկ խոռոչս և ձորակս, մէն իւրով մանր վտակաւ և աւերակօք տանց, ոչ հինք, այլ աննմանք եղելոցն յափունս Պամփիւլիոյ,




133. Սարպեդոն = Աղա-լիմանն. 1/15,000.

շինեալք գորշագոյն կրաքարիւ, հաւասար ստուարութեամբ հատեալք և յղկեալք և անօսր շաղախիւ մածուցեալք. նոյնպէս և ժայռք և մանր կղզեակք ծովափանցն ծածկեալ են այսպիսի բնակարանօք. իսկ բլուրք՝ բերդորէիւք և աշտարակօք պահնակաց։ Ի ցամաքի՝ լերինք բարձունք հեռանան 'ի ծովափանց, ընդարձակի հարթագետինն, և միջակ իմն է ընդ Քարուտն և ընդ Դաշտային Կիլիկիա։ Ցայսմ միջոցի նշանակի գեօղ մի միայն Օվաձըգ (Դաշտիկ) անուն, 110 Զ. բարձր յերեսաց ծովու։

— Աստուստ ափունքն դառնան ուղղակի ընդ հիւսիս և ոլորին անդրէն 'ի հարաւ, գործելով զհռչակաւոր հըրուանդանն Սարպեդոնի, և 'ի միջին զկիսաբոլոր գոգն կոչեցեալ արդ Աղա-լիմանն կամ Աղ-լիմանն, սակաւուք բացակայ 'ի Սելեւկիոյ, որոյ և նաւահանգիստ է, իբրև մղոն ևեթ տարակաց գոլով 'ի նմանէ։ Ցարեւմտեան եզեր գոգոյն կայ արդ գեօղն Թուրքաբնակ և նաւակայանն Աղա-լիմանն խսկէլէսի, 'ի հիւսիսոյ կողմանէն ունելով կիսաւեր բերդ փոքրիկ անկանոն ութանկիւնի, ստուար

[1] Հաւանօրէն են Provence, Venaissin, Limousin, գաւառք Հարաւային Փռանկաստանի. բայց զի ոչ յիշէ ընդ այլոց և զՎէնետիկ, մարթ է զնոյն իմանալ Վընեցի անուամբ, և զանսովոր Կոստանն՝ համարել ըստ ոմանց Տոսկան (Toscana), նահանգ Իտալիոյ։

պարապաք և ասչտաբանկաք յանկինան, և պատուար ըղգապանեսամբն. 'ի մասին միում են տունք բնակութեանց գծուծք: — Ի հնումն յառաջ քան զքնութիւն Սելևկիոյ' էր աստանօր քաղաքն Հոլմի, Ὅλμοι, ութասն ասպարէզ հեռի յարևմտից բերանոյ Կալիկադնեայ, յորմէ և վիճակն կոչիւր Հոլմիա, Holmia, և բստ ոմանց Հորմիա. այլ 'ի շինութեան Սելևկիոյ' անդր փոխադրեցան Հոլմիացիք: Ի սկիզբն ԺԷ. դարու 'ի յանախել հինից 'ի Միջերկրականին' բազում անգամ մարտնչէին ընդ նոսա նաւք Խոսպիտալացւոց. յամի 1612 ասպետք Մալթայի և Պոսկանացիք հետամուտ լեալ նոցա' առին զկով նդգի. առաքեցան ընդդէմ նոցա ծովապետն Օսմանեան Մուհամմէտ Լաթիւզ կամ Ցանոա. և դէպ եղև 'ի մարտի աւրեք ըմբռնել յելուզակացն քառասուն Ֆերենգացիս, սպանանել և զհաւատուրացս նոցա կանգնել 'ի վերայ պարսպաց Աղա-լիմանի. ընդ որ մեծապէս սրտմտեալ զքաջն Ցոսկանայ (Կոզմեյ), առաքեաց պատերազմիկ նաւս վեց' առաջնորդութեամբ Ինկիրամեայ ծովապետի. քառասուն ասպետք Ս. Ստեփանոս կարգի, և այլովք զօրականօք, յորս յարեցան ոչ սակաւ ինքնակամք յայլ և այլ ազգաց. և եկեալ (յամի 1613) յարձակմամբ առին զբերդն, արձակեցին անտի երկերիւր քառասուն քրիստոնեայս աղախնացիս, գերի վարեցին երեքհարիւր և յիսուն ոգիս, և նաւս ութ' յորոց երկուքն պատերազմականք: — Կիսաժամաւ յարևելից Հոլմեայ 'ի լերկուածս փոքու հրուանդանի յառաջելոյ 'ի ծով են աւերակք մեծի շինուածոյ, որ այժմ կոչի Ճէյր կամ Ճէհիր-Հորան կամ Ճուր-Հօրէն մեծամեծ որդամաշ վիմօք. դաշտն մեծ 'ի



134. Ճէյր-Հուրան.

միջի, կամարակապ պատուհանօք, և շուրջ զնի մնացուածք խճանկար յատակի, զոր ոմանք ասպարանս, ոմանք մենաստան և այլք բերդ համարեցան: — Հանդէպ այսր տեղւոյ է վերջինեալ հրուանդանն Սարպեդոնի, Σαρπηδών կամ Σαρπηδόνια ἄκρα, որ յոմանց միջասահման համարեցաւ երկրացն Կիլիկեցւոց, և 'ի հաշտութեան դաշնադրութեան Հռովմայեցւոց ընդ Մեծին Անտիոքայ' սահման անէրութեան նորա և տեառ քաղաքաց Փոքուն Ասիոյ: Որպէս նշմարի և 'ի քարտէս, հրուանդանն' լեզուաձև երկայնեալ է 'ի ծով ընդ հարաւ, վասն որոյ հաճոյ եղև Փռանկաց անուանել զայն զաւեհնարար Լիսան-էլ-զաղէյի (Լեզու ձառաւէկ կնոջ). բստ այսմ և Խոսպիտալք անուանէին Lingua di bagascia, և երբեմն լոկ La Bajaxia, կամ Lena de Labagaxa բստ Սանուտայ, որ և հարթ և աւազուտ ասէ զծովափունսն, և զծովն ծանծաղ զմիղոն մի [1]. բստ Փռանկաց Langue de Bagasse. Իսկ զնաւահանգս Աղա-լիմանի կոչէին Portus Pinum, Բնոցոյ Բինի, կամ Porto dipinto, եւ և Նաւահանգիստ Ս. Կղեմայ, Porto S. Clemente: Իբր 150 Ք. նեղբացուցն 'ի սպառուածէ հրուանդանին' 'ի վերայ տան միոյ կանգնեալ է լապտեր, երկու հաստատուն լուսովք. 15 Ք. բարձր յերեսաց ծովու, յոր ճառագայթէ ընդ մղոնս ութ:

130. Աստանօր աւարտի ծովագրութիւնս Պամփիւլիոյ և սփանց հովտին Կալիկադնոսի և Աշխարհին Սեր

1 Dicta autem Puncta de Labagaxa est valde plana, et in fundo sunt arenæ, et parvam habet aquam in mari bene per unum milliare.

Ատանայ, սակայ ինչ ընդ միջերկրեայս մխելով, ուր տեսաք և գյոլովս 'ի բերդորէից լիճ պարոնայց կամ իշխանաց՝ հպատակաց Թագաւորաց մերոց Ռուբինեանց. և յայտ է յանուանց իսկ նոցին՝ զի ոմանք ազգաւ և կրօնիւք յոյնք էին, սերունդք նախնի տերանց կողմանցն հայրենական ժառանգութեամբ, և ոմանք դաւանութեամբ եւեթ հոռոմ, այլ ազգաւ հայ. սակայն զոյգ երկոքեան եւս հպատակ կացին Թագաւորաց Հայոց մինչև ցկարճել իշխանութեան սոցա 'ի վերայ երկրին, և ոմանք 'ի բերդորէիցն յարքունիս գրաւեցան։ Զյոլովս յայսցանէ յիշեցաք 'ի կարգի տեղագրութեանս՝ ստուգիւ կամ կարծեօք, յիշեսցուք և զայլս ոմանս. յորոց մի է Կոտրադ, զոր յիշէ Սմբատ իբրև կալուած Ատովմեանն Կիւռ Վարդի, փոխանակ երիցն այլոց (Ս. Սոփեայ, Ցուտապեայ և Նաղլօնի) յիշեցելոց յԱրքունի պատմչէն. Թէպէտ և անծանօթ է սա ըստ դրիցն, այլ ծանօթ յեկեղեցական վիճակագրութեան, երբեմն նախաթոռ եղեալ Իսաւրիոյ նահանգի, Κότραδις կոչմամբ, կամ Κοτραδῶν, Կոտրադացւոց (եպիսկոպոս)։

Այլք 'ի գլխաւոր բերդորէից՝ դասակարգելոց 'ի հանդիսի Թագակապութեան Լևոնի և 'ի սպառ անծանօթ մնացելոց՝ ըստ դրիցն և ըստ յիշատակաց, են՝ Կովաս [1] և Սինիտ, որոց տիրէր Պարոն Ռոմանոս. և ըստ դասակարգին՝ Թուին 'ի ստորին կողմանս գետահովտին Կալիւկադնոսի. և զի ոչ այլ ուրեք յիշի Կոտրադ, իսկ 'ի Թեմս Պամփիւլիոյ նահանգին յիշի Կոլվասա, Κολβασα, գուցէ նոյն իցէ՝ վրիպեալ 'ի գրչէ մերմէ լ տառի. նկատելի է զի 'ի Սմբատ ոչ գտանի անուն բերդիս ընդ Սինիտոյ, այլ միայն յարքունի պատմչին։ — Ցետ Նորբերդի և Կամառտիասայ, և յառաջ քան զՄաղվա և զՍիկ, կարգին 'ի Պատմչէն Անդաւշծա և Կուպա, որոց տիրէր Պր. Պաղտին. ապա հաւանօրէն 'ի միջոցս նոցին որոնելիք են։ — Ընդ արևմտագոյնսն՝ ըստ դասակարգին՝ ընդ մէջ Մանովղատի և Ալարոյ և ընդ մէջ Կալօնօռոսի՝ դասեալ է Լակռաւենի, ընդ ձեռամբ երկուց իշխանաց, որ Թուին հայր և որդի, Կոստանդին և Նիկիֆոռ, յունանուանք՝ ինքեանք և տեղին, որ խնդրելի է յարևմտակողմանս Պամփիւլիոյ։ — Ընդ երկրայութեամբ կարգեցին և Ատառօս և Աստռօս. քանզի առաջինն՝ առ Սմբատայ գրի 'ի դասակարգին ընդ տէրութեամբ Ռամանոսի [2], մինչ արքունի պատմիչն զՌամանոս տէր ասէ Սինիտոյ և Կովասու. նոյն՝ յետոյ ընդ այլոց բերդորէից՝ ասէ վասն սորին Սմբատայ Գունդստապլի՝ լինել տէր և Աստռասայ, ոչ գիտեմ ուղիղ այսպէս գրեալ և որիշ տեղի, եթէ նոյն ընդ վաղ յիշեցելոյն Ասկուռայ (յէջ 115)։ — Ի նմին ժամանակի (1265) և եղբայր նորա Օշին՝ վկայի ընդ Կոռիկոսի, Մանիօնի և Կանչոյ՝ տէր լինել և Միտիզաւնին, որ և նոյնպէս անլուր և անծանօթ է ինձ այլուստ։ Իսկ Սինիտ կամ Սիւնիդ յիշի յեպիսկոպոսական Թեմս նահանգին Պամփիւլիոյ՝ հունկ բնաւից, Συνήδων, Սիւնիդացւոց (եպիսկոպոս)։

Այսոքիկ ըստ մերս ազգային տեսութեան կամ պիտոյից՝ տեղիք փափագելիք 'ի ծանօթութիւն. բայց ըստ արտաքնոցն և հին աշխարհագրաց՝ են կամ էին և այլ ծովեզերեայ մանր քաղաքք և շահաստանք յայսմ մասին՝ զոր անուանեցաքս Աշխարհ Սիր Ատանայ, և զորս աւելորդ վարկաք հետազօտել, այն զի և ոչ յայտնեցան այժմու ծովագրողաց, կամ չերևեցաւ նշանաւոր ինչ առ նոքօք. յորոց սակի են Պիսուրգիա (Πισούργια), ընդ մէջ Կելենտերեայ և Կրամբուսայ, զոր հին չափողք 45 ասպարիզօք հեռի ասեն 'ի Կռաւնեան սարէն (յարևմտից). — Միւլէ կամ Միւլաս (Μυλας), ընդ մէջ Զեփիւռիոնի և Սարպեդոնի, փոքր քաղաք 'ի փոքու հրուանդանի. — Նեսուլիոն (Νεσούλιον), դոյզն նաւակայան յարևմտից Միւլասայ. որոյ հանդէպ Պիտիուսա կղզեակ (Πυτιοῦσα), հաւանօրէն մի 'ի կղզեացն որ առ Զեփիւռիոնիւ. և այլն։

[1] Սուղ ինչ մերձաւոր ամին անուամբ և տեղեաւ գտանի նշանակեալ վերջինն 'ի Թեմից Իսաւրիոյ նահանգի՝ 'ի վիճակագրութեան միում, Κώου, զոր Լատինաց յեղեալ է 'ի Coi.

[2] Ի տպագրեալ օրինակի Սմբատայ պատմչի եդեալ է Ամանոս։



135. Դրամ Աւգոստէ քաղաքի.

Համարեալ լինել 'ի տեղւոջ Սսոյ, որպէս յիշեցաւ յէջ 215։

# Բ. ՄԻՋԻՆ ԿԱՄ ՏԱՐՍՈՆԵԱՆ ԾՈՎԱՓՈՒՆՔ

131. Ջանակեցաք 'ի ներածութեան Ծովային Կիլիկիոյ՝ այսպէս անուանել զմիջոց Արեւմտեան և Արեւելեան բաժնից նորին, որ և այլազգ բացատրելով հարաւային եզր է երկոցուն նախագրեալ մեծաց բաժնիցն, Քարայնոյն և Դաշտայնոյն, փոքու մասամբ և Լեռնայնոյն. դարձեալ՝ և գետահովտաց չորեցուն գլխաւոր գետոց աշխարհին, այսինքն 'ի բերանոյ Կալիւկադնոսի մինչև 'ի բերան Ջահանայ, յորոց միջի են և բերանք Կիւդնոսի և Սարոսի. իսկ ըստ ձևոյ ծովեզերացն՝ սահմանի ընդ մէջ Սարպեդոնեան սարի և Մեգարսոսին: Մի մասնն՝ արևմտագոյնն՝ զՔարային և զԼեռնային բաժնիցն բերէ կերպարանս, առ ստորոտով նոցին գոլով, ընդ որս իջեալ գետակաց՝ ձորս և ձորակս ձևակերպեն. միւսն՝ համակ դաշտային երկիր է, տարածեալ յաջմէ և յահեկէ հնոյ գաւառին Տարսոնի և նաւահանգստից նորին, վասն որոյ և յատկապէս Տարսոնեան ծովածոց անուանեսցուք զեզերս նորին, իսկ զառաջինն՝ Վարշագ. պատճառ այսպիսի կոչման սորա տեսցի 'ի ստորև ադ աճաւադիկ:

## Ա. ՎԱՐՇԱԳ

132. Անձուկ ծովեզերեայ սահմանն որ ընդ մէջ գետահովտաց Կալիւկադնոսի և Կիւդնոսի, իբրև 40 մղոն ունի երկայնութեան յարևմտից յարևելս, և իբրև 25 մղոն լայնութեան՝ 'ի լերանց մինչև 'ի ծովն, յոր արձակէ ոչ սակաւ գետակս և վտակս լեռնածինս. որոց գլխաւոր մարթ է ասել զԼամոս, յոր անուն և մասն մի երկրին կոչէր Լամոսեան գաւառ. բայց քանզի բովանդակ այսր տարածութեան չիք անուն պարագրիչ առ 'ի նախնեաց, պատշաճագոյն համարեցայ զկարգեալն 'ի վերնագրիս, հաւանելով բանից Պերդրանտոնի փռանկ ուղևորի յառաջին կէս ԺԵ դարու, զի ասէ այսպէս. « իշխողն Գարամանն՝ ունի և ծովեզերեայ սահման Ֆարսաց, Farsats, կոչեցեալ, որ ձգի 'ի Տարսոնէ մինչև 'ի Կոռիկոս, որում Կիպրացիք տիրեն, և մինչև 'ի » նաւահանգիստն Զաբարի? Zabari », (Զեփիւռիոն?): Ցայտ է թէ կամէր ասել և գրել Վարշագ, զի և ցարդ իսկ այսպէս կոչին լեռնակողմանքդ, Վարշագ կամ Վարսագ տաղը, թերևս վասն յովազուց գտելոց 'ի լերինսն, զի յովազ՝ վաշագ լսի 'ի Թուրք լեզու. և զի գտանի անդ գազանն, վկայէ Հէմիլդըն անգղիացի. առ որ՝ 'ի նոյն կողմանս ճանապարհորդելով բերին մորթ մի յովազու նոր սպանելոյ: Այս է մեր պատճառ անուանելոյ այսպէս զվիճակս զայս: — Ցաւուրս արշաւանաց Լէնկթիմուրի՝ ասի[1] Թաթար տոհմիս Վարշագայ տիրանալ կողմանցս. յորոց պէկ մի Օյուզ անուն՝ դարանեալ 'ի լերինս՝ յանկարծոյն յարձակելով 'ի վերայ բանակի Օսմանեանց՝ (յամի 1470-1), գրեաթէ զկէս զօրացն կոտորեաց, և զառաջնորդ նոցին զմեծ վզիրսն (Մուհամմէտ փաշայ) 'ի փախուստ դարձոյց:

Ի բազում ձորոց վիճակիս՝ արևմտագոյնն յերի մեծի գետոյն Սելևկիոյ (Կալիւկադնոսի), է ձորակ փոքր գետոյ Թարըը-սու: (Քաղցր Ջուր) կոչեցելոյ. յորմէ մինչև 'ի Լամոս՝ 'ի հզօրագոյնն գետակաց գաւառիս, ընդ երկարութիւն 15-20 մղոնից՝ ոչ նշանակի 'ի քարտս այլ գետակ, թէ իցեն և թէ ոչ. այլ 'ի միջոցի աստ ծովափանցն՝ են յիշատակաց արժանի հռչակաւոր տեղիք, բարենշանք և 'ի պատմութեան մերազնեայ տերանց երկրին: — Ցիչեալ գետակն Քաղցրաջուր թափի 'ի ձկնաշատ խորշ մի ծովուն քարաժեռիւք գոգացելոյ, անցեալ ընդ աւազան, և նախ ընդ հովանաւոր ծառաստան. 'ի վիմուտս է և աղբերակն նորին: — Ի հիւսիսոյ արևելից աղբերն՝ մնան քառակուսի շինուածոյ միոյ քանդելոյ որմունք երկու: Զայս աղբիւր համարի Լանկլուա զհամբաւեալ հանճարատուրն Նուս (Νοῦς): — Իբրև փարսախաւ բացագոյն յարևմուտս՝ 'ի ծովեզերին է գեօղաւանն փերչէմպէ, և թուի 'ի տեղւոջ Պեկիլի կոչեցելոյ առ հինս առապարի (Ποικιλη πέτρα)[2], թէպէտ այլք այլազգ համարին, և ոմն՝ զկոչեցեալ տեղին Calo-Coracesium. են անդ աւե-

[1] ՀԱՄՄԷՐ, Օսմանեան պատմութիւն, Գիրք ԺԵ:

[2] ՍՏՐԱԲՈՆ ('ի տեղագրութեան Կիլիկիոյ), Գիրք ԺԴ, Ե. 5:

բանկք քաղաքի ոչ փոքու, այլ և ոչ կարի հնոյ. զի արձա-նագիր մի յայն 'ի վերայ արեւելեան դրանն՝ ծանուցանէ Փլորիանոսի կամ Փլաւիոսի Ուրանիոսի իշխանի Իսաւ-րիոյ՝ առ թագաւորութեամբ Վաղեսի և Վաղենտիանո-սի և Գրատիանու, 'ի միջոցի 367-75 ամաց, իւրովք ծա-խուք շինեալ զտեղին ամայացեալ. և է այս.

ΕΠΙ ΤΗC ΒΑCΙΛΕΙΑC ΤΩΝ ΔΕCΠΟΤ[Ω]Ν ΗΜΩΝ
ΟΥΑΛΕΝΤΙΝΙΑΝΟ[Υ] ΚΑΙ ΟΥΑΛΕΝΤΟC ΚΑΙ ΓΡΑΤΙΑΝΟΥ
ΤΩΝ ΑΙΩΝΙΩΝ ΑΥΓΟΥCΤΩΝ
ΦΛ. ΟΥΡΑΝΙΟC Ο ΛΑΜΠΡΟΤΑΤΟC ΑΡΧΩΝ
ΤΗC ΙCΑΥΡΙΩΝ ΕΠΑΡΧΙΑC ΤΟΝ ΤΟΠΟΝ
[ΚΑΙ]ΕΡΗΜΟΝ ΟΝΤΑ ΕΞ ΟΙΚΕΙΩΝ ΕΠΙΝΟΙΩΝ
ΕΙC ΤΟΥΤΟ ΤΟ CΧΗΜΑ ΗΓΑ[Γ]ΕΝ ΕΚ [ΤΩΝ] ΙΔΙΩΝ
ΑΠΑΝ ΤΟ ΕΡΓΟΝ ΚΑΤΑCΚΕΥΑCΑ[C] ❊

Քաղաքն զետեղեալ է թատերաձև, յէջս երկուց բլրոց, յորոց միջի մարգձակ շամբուտ մինչև 'ի ծով. յաւերակսն երեւին եկեղեցիք, որպիսի և այս է (Թիւ 136). կամարա-գրունք, ջրբեր ագուգայ եօթնեատան կամարաք, ջրամ-բարք, գերեզմանք, և այլն. արդ մնացածք և թուփք պէս-պէս ծածկեն զքաղաքամէջն։

Ոչ հեռի 'ի կողմանցս, այլ յարեւելեան հիւսիսային լեռնային առաջմանս Սելեւկիոյ՝ թուի ինձ խնդրելի կա-րեւոր տեղի մի, չէն մեծ և բերդ հզօր, Պռակամնա ա-նուն, Πραχανά. զի Նիկետաս պատմիչ Պրախա կամ Պրա-խան կոչելով, Πραχάν, Սելեւկիոյ քաղաք առնէ զայն [1], իսկ Կիննամոս՝ Իսաւրիոյ քաղաք [2]. և յետ նախ Մա-նուէլի կայսեր (յանցանելն 'ի Կիլիկիոյ ընդ Իսաւրիա, յամի 1143, տանելով զդի հօրն 'ի Կ. Պոլիս) թափել զտե-ղիս զայս 'ի ձեռաց Թուրքաց. որք յետ երկուց ամաց (1145), վերստին կորզեալ յաւար հարին հանդերձ առհ-մանօքն. այլ յետ երկուց ևս ամաց 'ի գալ կայսերն Մա-նուէլի 'ի վերայ նոցա, սուլտանն Իկոնիոնի (Մասուտ) հրեշտակ առաքեալ նմա զՍիւլէյման անուն՝ եթող 'ի նա



136. Եկեղեցի աւերակ մերձ 'ի Փերչէմպէ ասան.

զՊռականա, և խաղաղութեամբ դարձեալ յետս ընդ-կայսրն։ Թէ յայնժամ Մանուէլ յանձնեաց զտեղին և թէ յետոյ, այս յայտ է զի զինի սակաւ ամաց (1151) Տիգրան անուն 'ի Հայոց հաւատարմաց կայսեր՝ իշխան էր Պռականոյ, և ըմբռնեցաւ 'ի քաջէն Թորոսէ Բ 'ի մեծի մարտին Մսսայ, և տարեալ տուգանս զերծաւ. որ և յետ ամաց 'ի գալ Մանուէլի կայսեր 'ի Կիլիկիա, կոչեցաւ 'ի նմանէ։ Թոռն նորա թուի համանունն Տի-գրան, տէր տեղւոյն յաւուրս թագաւորութեանն Լեւոնի (1199). բայց տասն ամաւ յառաջ (1188) անկեալ էր տե-ղին 'ի ձեռս Թուրքաց, ոչ գիտեմ՝ յորքան ամաց հետէ. և կամեցեալ Սիր Պաղտնի գունդստապլի մեծազարմն

1 ՆԻԿԵՏԱՍ. 'ի վարս Մանուէլի կայսեր. Ա. Ժ.

2 ՅՈՎՀ. ԿԻՆՆԱՄՈՍ. Գիրք Պատմութեանց. Բ. Ե. և Ժա.

իշխանի՝ կորզել զայն՝ յանկարծոյն 'ի վերայ հասանելով, ոչ յաջողեաց, այլ և սպանաւ իսկ անդէն. սակայն փութով լուծաւ վրէժ նորին 'ի քաջէ. զի «զկնի երկուց ամսոց էառ գողութեամբ[1] զՊռականա՝ Լեւոն, և եսպան զբերդաւագն զՏիփլի ամիրա՝ որ սպանեալ էր զՊաղտինն, և ոգի երկու հարիւր»: Ցաւուրս Թագաւորութեան Հեթմոյ Ա, 'ի մեծ արշաւանի Խլյաթէստին սուլտանի, 'ի պաշարելն բազմաբիւրօքն զՏարսոն, 'ի մեռանել նորա՝ մինչև հաշակեալ գուժին՝ ամիրայք նորա բանադնաց եղեն ընդ Հեթմոյ, «ու ուզեցին զՊռականա, որ սիրով 'ի տուն երթային. նա Թագաւորն երետ, որ ելան ու գնացին[2]». այլ իբրև ծանեան Հայք զնենգ նոցա՝ զդիպող ժամու ակն կալեալ, յետ երկուց ամաց (1246-7) դարձեալ գաղտնորոգայթ հնարիւք քարագնաց քարամուտ արամբք՝ մոլին կալան զբերդն: Ի հնարից աստի քարամոլիցն՝ գուշակի բնութիւն կամ կերտուած Պռականայ, լինել 'ի քարաժայռս կանգնեալ՝ ըստ այլոց ծանօթ նշանաւոր բերդից: Հաւանօրէն ընդ երկար մնաց




137. Ցատակաձեւ քաղաքատեղւոյ եւ բերդորէից Կոռիկոսի. 1/15,000.

այնուհետև տեղին 'ի ձեռս Հայոց, և 'ի կատարածի իսկ տէրութեանն՝ յամի 1374 յիշի բերդաւագն Կոռիկոսի Կոստանդին Պռականացի (Messire Constant de Braganna, ըստ Տարտելի), զոր համարիմ ոչ ծննդեամբ միայն 'ի տեղւոյն, այլ և տէր նորին. որոյ ըղձալի է քննութիւն, և գիւտ հայկական արձանաց յիշատակի:

Ոչ հեռի 'ի սահմանացս խնդրելի է և Բերդիկն ամրոց, զոր 'ի դասակարգի բերդորայից և բերդատեարց՝ անընդմէջ նախ քան զՊռականա և յետ Մանաշոյ՝ կարգէ Պատմիչն. յելս ԺԲ դարու բերդատէրն էր Միխայլ, յանուանէն գուշակեալ յունազգի կամ յունածէս: Թերևս այս իցէ կոչեցեալն յԱյրարացի պատմչէ՝ Բերին

1 Ըստ աւանդութեան արքունի Պատմչին Կիլիկեցւոց:

2 Եւ այս ըստ Սմբատայ Գունդստապլի պատմչի:

բերդ (Berin), յորոյ վերայ եկին մեան մի զօրաց Պի-պարսայ 'ի մեծի արշաւանին, յամի 1274 [1]: — Դարձեալ 'ի սոյն սահմանս խնդրեսցի և Սեւիլն, որոյ տէր էր Օշին ամի յելս ԺԲ դարու, և կարգի 'ի ցուցակին ընդ մէջ Պամպանոյ և Կոռիկոսի: Յեկեղեցական վիճակագրութեան միում Ժ դարու՝ ընդ եպիսկոպոսական թեմս նահանգի Կիլիկեանն Սելեւկիոյ՝ նշանակի Սեւիլա (Sevila), յետ Դալիսանդոսի և նախ քան զծանօթսն Կելենդերի և Անեմուռ:

133. Փարսախաւ ճանապարհի ևեթ հեռի է 'ի բերանոյ Թամթըլը-սու գետակի՝ անուանին Կոռիկոս, բերդն և քաղաքը, որոց արտաքին խիտ ամրութիւնք կարգեալ թուին 'ի բնութենէ՝ խարակք 'ի ծովու պարապանեն կանգնեալք և քարաժայռք 'ի ցամաքի. և ընդ բոլանդակ երկարութիւն ծովեզերացս և անդրադոյն ևս՝ սփռեալ կան ազնուակ գերբուէք շինուածոց, ընդ մէջ կապուտակոյտն ալեաց ծովուն և կանաչորակ կողից լեռնալանջաց։ Ի թիկանց նոցին ամբառնան լերինք՝ որ հաւանօրէն են անուանեալքն յառաջագոյն Յունաց Արիմն կամ Արիմնս, 'Αρίμος, ըստ մերձաւորութեան ձայնին՝ համարեալ յոմանց նշանակել զԱրամեանս, այսինքն զԱրամ՝ զհին բնակիչս երկրին. զորս հերքեալ վանեցին Կիլիկեցիք՝ դարձեալքն 'ի Տրովադայ պատերազմէն. և զի Հոմերոս 'ի ներգոյական հոլով յիշէ զայդր կամ զտեղի (εἰν 'Αρίμοις) ին-Արիմն, Լատինք զուգեցին զյօդն ընդ անուանն միասին, Inarime, որպէս է տեսանել առ Վիրգիլեայ, յԵնէականին, Թ. 715-6.

« Սարսի .... խնդրիմ՞,
» Այն որ սաստիւն Արամազդայ՝ կարծր 'ի խշտի անկեալ
» Տիփեայ [2] ».

և այսպէս մեկնաբանեն. Տիփոէն յիսնագլուխ կամ հարիւրագլուխ՝ մի 'ի հսկայիցն դիմամարտից Արամազդայ,



138. Ցամաքային եւ ծովային բերդք Կոռիկոսի.

միակ զերծեալ 'ի կոտորածէ նոցին՝ շղթայակապ արգելաւ 'ի քարայրի ուրեք լերանցս Արիմեայց. այլ յառաջագոյն տապեալ՝ պնդեալ էր զհետ Աստղկան մինչև յափունս Եգիպտոսի, ուրանոր ձևեալ երկուց կարգեալ զդիւահսն՝ անցուցանեն յայն կողմն, և ինքեանք կարգին յերկոտասան աստեղատունս: Հին քերդողք և աշխարհագիրք յայս և այլ կողմանս արանեն և գնեն զլերինս և զքարայրս Արիմեայց. այլ յոլովից վարկած է լինել աստանօր 'ի Կիլիկիայս. թերևս ճշգրտագոյնս առելով բարձրաթռիչն Պինդարու՝ վասն հսկային, եթէ էր երբեմն բնակեալ 'ի հռչակաւոր քարայրս Կիլիկիոյ, այլ զորոյն Սիկիլիա և ծովապատ կղզին վերաբերեալ Կիմեայ՝ արգելեալ ունին զնա: — Թողեալ զառասպելսն՝ մատիցուք 'ի տեսագոյն ևս աւանդութիւն զհռչակելոյ 'ի նախնեաց քարայրիցն Կոռիկիեանց, Κωρύκιον ἄντρον, որ 'ի նոյն լերանցամէջս են, այլ մերձագոյն 'ի ծովեզրն, իբր մղոնաւ և կիսով՝ (քսան ասպարէզ ըստ Ստրաբոնի) հեռի 'ի Կոռիկոս հրուանդանէ, որ ունէ զբոլորակ հովտաձև ընդարձակ զոգն շրջապատեալ 'ի բարձր քարաւերանց. յատակ մեծի այրին անկանոն ձևով և անհարթ քարուտ է, այլ մշտադալար և մշակելի բուսովք զարդեցեալ. և ուրեք ուրեք ջրամբարք խուլ. է և այլ քարայր՝ յորմէ բղխէ գետակ ակնավճիտ ջրոյ, այլ ընդ հուպ ընդ երկրաւ անցեալ՝ գնայ թափի 'ի ծով, և կոչի Դառն-ջուր (Պիկրոն ի-տոր, Πικρὸν ὕδωρ). Այսպէս ըստ Ամասիացւոյն (Ստրաբոնի). զոր այլ ևս աշխարհագիր (Մելա) պերճագոյն ևս

1 Տ'ՈՀՍՈՆ. Պատմութիւն Մողոլաց, Գ. 475.

2 Fremuit ... cumque cubita
Inarime Jovis imperiis imposta Typhoeo.

Ի Հոմերոսէ առեալ Վիրգիլի զայս աւանդութիւն, որ առէն յիլիականին, Բ. 783. ըստ թարգմանութեան Հ. Բագրատունւոյ.
... « Հեծեր զետնին, որպէս յորժամ Արամազդ
Բարկացեալ փայլատակամբք զՏիփոեւսի թափէ զերկիր
յԱրիմայս, ուր ասացեն զՏիփոեայ լինել խշտիս »:

ստորագրէ չափազանցօրէն. սակայն արդի ուղևորք՝ որոց յաջողեցաւ քննել զտեղին՝ ոչ գտին 'ի նմա բոյս քրքմոյ և ոչ տունկ մշակելի, այլ մօրուտ և ճախնային յատակ, և պաղածս առկախեալս 'ի վերուստ 'ի կամարայարկէն, որ բարձր է 'ի հասարակի իբրև 50 Ջ., և առ մուտքն բարձրագոյն ևս ց՝80 Ջ., ընդ երկայնն 270 Ջ. և ընդ լայնն 20. յորմունսն նշմարին յունական արձանագրութիւնք։ Այս՝ գլխաւոր քարայրն է, զի են և այլք առ նմին, յորոց 'ի միոյն լսելի լինին խոխոջանք ջրոց։ Սակաւուք 'ի բացէ մուտցն կայ փոքրիկ եկեղեցի բիւզանդեան նկարուք, զարդիս փոխեալ 'ի մզկիթ, յոր ածէ անձուկ փող կամ երկայն խուռոչ մի։ Է և այլ քարայր բացագոյն՝ 'ի բարձու ձորեղեր Շէյթանլըգ կոչեցելոյ, 'ի բնէ և յարուեստէ յարդարեալ, և շուրջ քանդակք բազնի և մահու նշանակաց, կիսաբոլոր ձևով 'ի ներքուստ. թերևս տեղի գերեզմանի կամ ուխտից. այլ արդ դժուարին է յոյժ ճանապարհն ընդ կոչկոռս ուղղաբերձ ժայռից, բայց ըղբաղնաւն են աստիճանք ինչ քարակտուրք։ — Գետնասող վտակն ստրաբոնեան թուի արդ յերևան ելեալ, զի անցանէ առ տեղեաւն և կոչի Տէյլի-սու, և առ սովաւ գտանի քրքում. դալարազուարճ են վայրքն, այլ դժուարակոխք։ Միւս ևս աղբիւր զարմանալի և բարեշնորհ կարգի յայս սահմանս 'ի բնապատումն Պլինիոսէ, վերոյիշեալն Նուս, որ կազդուրէր և զգօնացուցանէր զարբեցողացն միտս։ Սակայն և արևմտեան պատմիչք ոմանք միջին դարուց՝ ասեն 'ի քրքմոյ Կոռիկոսի պատրաստել զնիւթ կարմրադեղոյ 'ի նկարազարդ գրուածս իւրեանց [1]։

Ժամագնաց մի հեռի 'ի քարայրիցն ընդ արևելս և նոյնչափ 'ի հարաւոյ Այաշայ, առ ծովեզերբ կան հռչակագոյն և կարևորագոյն մնացորդք համանուն տեղեաց, այսինքն երկոքին բերդքն և քաղաքաւանն Կոռիկոս կոչեցեալ 'ի հնումն, Κώρυκος, Coricus, Culchus, Curchus, 'ի Փռանկաց և յԻտալաց միջին դարուց՝ պէսպէս յեղեալ, Courc, Corc, Curco, Colco, և Քօրկոս յայժմուս 'ի Թուրքաց։ Զառաջինն յայս անուն կոչէր հրուանդան մի, այլ զի չերևի անդ որոշակի ձև հրուանդանի՝ թուեցաւ ոմանց թէ նոյն ինքն կղզեակն էր՝ յորոյ վերայ կառուցեալ է Ծովային բերդն Կոռիկոսի. իսկ այլք համարին զսա լինել կղզին Կրամբուսա, յիշեալ 'ի Ստրաբոնէ առ վայրօքն, և 'ի մէնջ (յէջ 325)։ Վասն անքոյթ դրիցն 'ի գոգս լերանց՝ համարի Կոռիկոս անուանել տեղւոյն, զի 'ի յոյն լեզու նշանակէ տեղի խոր և փոր կամ




139. Դրամ Կոռիկոսի առ Փիլիպպոս կայսերաւ.

անօթ։ Էր անդ 'ի հնումն քաղաք՝ ոչ աննշան, բարգաւաճեալ վաճառականութեամբ՝ իբրև նաւահանգիստ Սելևկիոյ, և ըստ պաշտաման Յունաց՝ Հերմեայ նուիրեալ, զորոյ և պատկեր տպաւորէր 'ի դրամսն. այլ յետոյ՝ որպէս և այլ ծովեզերեայք Կիլիկիոյ՝ յեղուզակաց որջ եղև և սա։ Առ Բիւզանդացւովք էր թեմ եպիսկոպոսական ընդ նահանգաւ Տարսոնի. առ որովք յիշի նորոգութիւն բաղանեացն և անկելանոցի 'ի Յուստինիանոսէ կայսերէ. բայց ոչ յիշի ընդ այլոց քաղաքաց՝ 'ի հակառակամարտել նոցին և Արաբաց, և ոչ յայլ պատմական անցս. որով երևի յոյժ նուազեալ 'ի նախնի չքոյն, վկայ թողլով նմին՝ բազմաթիւ յիշատականոցս, շիրիմս և արձանագրութիւնս։ Առ խաչակրօք սկիզբն էառ նորոգութեան և Կոռիկոս. բայց մինչդեռ Պեմունդ խորհէր ձեռն արկանել 'ի նա, կանխեաց կայսրն Ալեքս առաքել անդր նաւուք զԵւստաթիոս ներքինի զօրավար, նորոգել զքաղաքն և յապահովել զնաւահանգիստն, զի խանգարեալ էին յայնժամ չէնքն [2]։ Յետ ոչ բազմաց ձեռն հայկական կարկառեալ եհաս կալաւ և զԿոռիկոս հանդերձ ծովեզերօքն և պահեաց ցըվերջ կոյս հարստութեան թագաւորացն։ Եբրայեցի ուղևորն Բենիամին Դուտելայ՝ յամի 1163 նաւեալ 'ի Կիպրոսէ և ելեալ այսր, սահմանագլուխ գրէր զսա Արամայ, այսպէս կոչելով զՀայս, և յանուանէ յիշելով զԹորոս (Բ) թագաւոր լերանց։ Յելս ԺԲ դարու Պարոն Սիմոն էր իշխան Կոռիկոսի, որ Կուռիկաւս գրի առ պատմագրին, թերևս 'ի զարմէ իշխանացն Յունաց կամ 'ի յունացելոց անտի։ Յայնմ ժամանակի, այն է յամի 1190, 'ի 15 յունիս ամսոյ, մասն մի բանակի մեծի կայսեր Փրետրիկեայ (հինգ աւուրբ յառաջ ջրախեղդ եղելոյ 'ի Կալիկադնոս), աստ ծովամուտ եղեալ՝ նաւեաց յԱնտիոք, զի կարևոր նաւահանգիստ էր յայնժամ Կոռիկոս. անդր յետ ամաց ինչ (1195) եկն և Ամաւրի թագաւոր Կիպրոսի՝ ընդունել զկին իւր և զմանկունս, զգերեալսն 'ի Գանաքի յեղուզակէ. զորս Լևոն մեծասաստ հրամանաւ պատուիրեաց Կիռ Սակոյ (Սահակ) ձեռնտուի յեղուզակին՝ առաքել անդր. եկն և ինքն, և բազում մեծարանօք ընկալեալ զԱմաւրի՝ արար խնճոյս մեծ. այլ իբրև 'ի նմին պահու ծովապետ թագաւորին (Ռեմոնդ de Bone-Done) փութացուցանէր զնա 'ի չու դարձի՝ վասն կասկածանաց մրրկի, տրտմեալ Լևոնի ընդ անակնկալ և ընդ անարգել դէպսն, հրամայեաց բառնալ տանել 'ի նաւն և զհամադամն համօրէն սպասիքն. և հազիւ ժամանեցին զերծանել։ — Սա ինքն Լևոն ձեռն արկ 'ի շինութիւն և նորոգութիւն տեղւոյս, որպէս է գուշակել յարձանագրէ միոյ ծովային բերդին, իբրու յամի 1206. յորում, որչափ ստուգի 'ի թերակատար ընդօրինակութենէն կամ 'ի մաշեալ տառիցն, ասի շինեալ նորա զպուրճն մեծ. և այսու յայտնի զի վաղու իսկ շինեալ էր՝ զէթ մասն մի նորին։ Վիլեպրանտ որ յամի 1212 եկն այսր 'ի Տարսոնէ ոչ յիշէ զբերդն, այլ զքաղաքն ծովանիստ (in mari sita), նաւահանգիստ ունելով բարի, և աւերս զարմանալի շինուածոց՝ նմանս հռովմէականաց։ Ի նմին ժամանակի յամի 1210-1212 Վահրամ մարաջախտն էր տէր Կոռի-

1 ՀՍՑՑ. Պատմութիւն վաճառականութեան Արևելից, Բ. 646։

2 ԱՆՆԱ ԿՈՄՆԵՆԱ, յԱլեքսիադն, ԺԲ. 266։

կայի, որպէս ծանուցանէ Լեւոն 'ի պարգեւագրին առ Գենուացիս, ոչ կարելով ազատ կացուցանել զնոսա 'ի մաքսէ զոր պարտ էր հատուցանել իշխանին՝ 'ի վիճակի նորին։ Այս Վահրամ՝ որ տէր կոչի և այլոց բերդի կամ տեղւոյ միոյ՝ Շեկատի? (Schechadi գրեալ յԱւգուլթեարանէ), յետ մահուան Լեւոնի կամեցաւ առնուլ 'ի կնութիւն զԱլիծ՝ դուստր եղբօր նորա, զմայր Ռուբենի-Ռեմոնդի, և զորա կոչեն կայսր առ 'ի թագաւորեցուցանել, և ապստամբեցոյց զՏարսոն. այլ Կոստանդին Պայլ հարստութեամբ և զօրութեամբ 'ի բուռն էարկ զնոսա, և բանտի կամ սրով զրաւեաց։ Հայր Վահրամայ կոչի Կոփրեդ, ոչ գիտեմ անուամբ լոկ թէ և զարմիւ փռանկ (*Baharam* filius Gofredi de Corco[1]). զդուստր սորա Մարիամ առեալ էր 'ի կին Փիլիպպոս որդի Պալեանն Իպլինեան[2], Իբրև զապստամբի և զդաւաճանի դատապարտելոյ՝ զաւրութիւն Վահրամայ նուաճեաց և կալաւ Կոստանդին Պայլ. և յորժամ թագաւորեցուցեալ զորդի իւր Հեթում՝ տայր և այլոց որդւոցն ասպարութիւնս և ատացուածս, զկոմսութիւն կամեցաւ տալ Օշնի. ընդդէմ դարձաւ հօրն՝ Սմբատ, իբրև անդրանկութեան իրաւամբք իւրեան վարկանելով անկ, ըստ կարծեցեալ օրինաց Ասսիզացն Երուսաղեմի. եհարց Կոստանդին զգաղ օրէնսգէտս և զփեսայ իւր ('ի դուստրն Մարիամ) զՅովհան Իպլինեան՝ զորդին Փիլիպպոսի, և սորա քննեալ ընդ



140. Ցամաքային բերդ Կոռիկոսի.

այլոց՝ իրաւացոյց զԿոստանդին. զի ոչ հայրենի ժառանգութիւն էր Կոռիկոս, այլ ի բռնի կալեալ, վասն որոյ և իշխան էր տալ ում և կամէր։ Եւ այսպէս հաստատեցաւ Օշին տէր և ժառանգ տեղւոյն[3], զոր և նորոգեալ յաւել նոր շինուածս, որոց աւարտ թուի եղեալ յամի 1258. և կոչի նա յորջորջմամբ Պատմչէն՝ « Տէր գերագոյն Դղեկին

1 Պարգեւագիր Լեւոնի, յամի 1210։ — *Cartulaire*, 116.

2 Աւագեալ և փռանկ հռչակելոյ Պալեանու Իպլինեան՝ որդի է Փիլիպպոս, որ 'ի պայլութեան Զապելին Ա թագաւորի Կիպրոսի՝ պայլ կարգեալ էր նմա և տէրութեանն, և † յամի 1227-8։

3 Նոյն ինքն Յովհան Իպլին՝ հեղինակ պաշտման ծանօթ Ասսիզաց Երուսաղեմի, այսպէս պատմէ զիրսն, ըստ այնր ժամանակի փռանկ բարբառոյ. 'ի ձեռն պղնձի գրոյն. զոր իբրև մերոյ սովորութեան պատմութեան մեկնաբանութիւն, որոնց հաստատիմ ասացեալ 'ի Համարոտ Աշխարհագրութեան. ընդ... թէ ոչ հաւատակից հաւաքածոյի, այլ ոչ անհնար 'ի հնազանդին բանակորգս. Celui qui a fié conquis le peut doner, par l'assise ou l'usage de cest reiaume, auquelque il vient de ces heirs, mais que ce soit par l'otrei de celui de qui il tient le fié. Et ce me distrent le Seignor de Seete, Mesire Bellian *, et Sire Nicolle Antiaume, desquels Dieu ait les armes: et je lor enquis ce, por ce que le Baill d'Ermenie me manda, preant que je lor enqueyssce c'il

* Պալեան՝ տէր Սիդոնի... Հեթմոյ Ա.

«Կոռիկոսի»: Յամի 1255, մինչ 'ի սկիզբն մայիսի ե-
կեալ էր այր 'ի Թաթարաց աշխարհէ՝ Ռուպրուք Հալա-
կուոր միանձն և դեսպան ճանապարհորդեցիր, եհաս գիր
ունենալ յաջող դարձի Թագաւորին Հեթմոյ անդուստ.
վասն որոյ հայր նորա Կոստանդին Պայլ ժողովեալ զա-
մենայն որդիս իւր՝ արար ուրախութիւն մեծ. միայն մի
'ի նոցանէ, ասէ, Պարոն Օշին ոչ գոյր 'ի խրախճանսն,
զի շինէր բերդ մի. և կարծեմ թէ մի յերկուց բերդիցս
Կոռիկոսի է. զոր՝ այժմ Թուրքք Քորկոս գալէսէսի կոչեն: Մին կայ 'ի ցամաքի առ ծովեզերբն, յերի աւերակաց հնոյ քաղաքին. մասամբ 'ի դժուարամատոյց քարամերոյ. կրկին պարսպաւ պատեալ, մարտկոցաւ և աշտարակաւ և 30՝ խոր խըրամով՝ 'ի նոյն խել 'ի ծայրին կամաւ փորեալ, որպէս երևի ցարդ 'ի հիւսիսային և յարևելեան կողմանս, յորմէ եկեալ աղբիւր մի՝ հոսր ըղփոան, և աւելին ջըրմըդ Թափէր 'ի ծով. ընդ մէջ աշտարակացն սանդուղք զարծեալ էին յելանէլ 'ի պարիսպն. յորս երկու դրանք երևին, մի ընդ հիւսիս՝ շարժական կամրջաւ մտանելի. միւս մեծ ընդ արևելս 'ի ծովախորշն, յորոյ վերոյ փորագրեալ էին հայերէն յիշատակք, զոր ոչ կարացին ընթեռնուլ Հայք ուղեկիցք Յովսափատայ Պարպարոյ վենետկեան դեսպանի յամի 1471. յայժ թանձր և ամուր վիմաւ էր առ զպարիսպն և զաշտարակսն. և 'ի պարսպաց մինչ 'ի ծով՝ ամրախուռ կրունկն կամ՝ զառիվայր, որպէս և 'ի բերդին, անընդմատ 'ի ուղղաց. Համայրի և զըլխապատս՝ իւրև երեր մտան մըրմի. յամենայն անկեան բերդին էին ջրհորք քաղցր ջրոյ, և 'ի հասարակաց տեղիս՝ չորք մեծամեծ ջրամբարք բաւականք 'ի պէտս մեծաց քաղաքաց անգամ. ընդ արևելակողմն դրանն ընթացածիգ մի՝ երկուստեք համապարհին կամարք էին կենայք միատանի սեամբք, (այլ յայնժ ժամանակի քանդեալք և անկեալք 'ի միոյ կողմանէն), որք տանէին յեկեղեցի մի մեծ և գեղեցկաշէն, կիսով մըչնաւ բացաղոյն անտի՝ կենաց սեամբք մեծամեծաւք և այլովք պէսպէս վայելուչ քանդակաւք:



141. Ծովային բերդ Կոռիկոսի.

Մայս՝ փաստեկ միպաստան՝ յեկս կայս ծովարս, մինչ զեւ եւ չէն էր տեղին այն՝ այսպէս ասապագրէր.
«Ալեալին ձայրուս-
»բանթեամբ զեռե-
»ղեալ է Կոռիկոս,
»զի ծով պատէ զնա
»չորջ, այլ ոչ բոլո-
»րովին. առաջի
»դրանն հրապարակ
»է իբրև երկու նե-
»տաձիգ, և 'ի թի-
»կանց՝ լեառն կայ
»բարձր յոյժ, ապա-
»ռաժ և խոժոռ.
»երիս միայն անի
»մուտս, և այնպէս
»փախուստ և ողոր-
»կուս, զի չմարթի
»բայց միոյ մարդոյ
»կամ երկուց միայն
ելանել[1]: — Զարգիս, բառ Լանկլուայ, երեք մատրունք են 'ի բերդիս յայսմ ցամաքայնում. 'ի մեծագունին երևին նկարէն պատկերք Աստուծոյ և զարդք յարմաւն, 'ի սիւնս և 'ի կամարս, ձեռքան անկեալ է. երկրորդին միւս մատրունք խորան խնկեալք են փլածոյք: Եղեւին և այլ տեղիք ամրաբանգաց և արգելարանաց և ստորերկրեայ պահարանաց:

Ի հանդիպոյ սորա դրան բերդին՝ 'ի ծովեզերէն ամբարտակ ձգեալ էր մինչև 'ի կղզեակն՝ յորում Ծովային բերդն, Գըզգալէ գալէսի կոչեցեալ և բառ ումեմն՝ փառնայց գալէսի՝ 'ի Թուրքաց. առ որ՝ քանզի քարշեալ է ամբար-

poreit, par l'assise ou ousage dou reiaume de Jerusalem, doner le fié, que il avoit de son conquest, auquelque il vedreit de ces enfans, par l'otrei dou seignor, de qui il teneit le fié. Et ce qu'il me manda que je lor enqueysce por le Core que il diseit que il aveit conquis et que il voleit doner à Baron *Oïssin* son fiz; et que Baron *Sembat*, le Conestable d'Ermenie, son ainzné fiz, contrediseit cel don, et diseit que il ne le poeit faire. Et por ce me manda il que je lor enqueysce ce il le poreit faire. Et il me distrent que oy bien: car aussi come le conqueror dou fié le peut rendre et quiter au seignor de qui il le tient, et que, ce il le fait, ces heirs n'i pevent puis recouvrer le fié par l'assise ou l'usage de cest reiaume, le peut il par la dite assise ou par le dit usage doner auquelque il viaut de ses heirs par l'otrei de celui de qui il tient le fié, ou à l'un de ces heirs, seit à son dreit heir ou à autre... Et je, ensi come il le me distrent, le mandai au dit Baill d'Ermenie, et il dona à Baron Oïssin le Core, qu'il ot et tint tant come il vesqui, l'oiant et le veant dou dit Conestable, son ainzné frere qui eust mit contredit et chalonge, c'il faire le peust par raison. — ASSISES DE (LA HAUTE COUR DE) JÉRUSALEM, CXLV.

1 Comment le chastiaus est assis
De Courr, qui est grans et massis
De tours, de creniaus et de murs
Qui sont haus, fermes et seurs.
Coure siet en pais d'Ermenie,
E s'est assis par tel maestrie
Que la mer li bat au gyron,
Et non mie tout environ.

Devant la porte a une place
Qui tient deux arbies d'espace,
Et puis une haute montaigne
Qui est moult rote et moult grifaigne;
Et se n'i a que trois entrées
Qui sont rotes et si polées
Qu'il n'i peut monter nullement
Qu'un homme ou deus tant seulement. — MACHAUT.

*տակն, հարկ է արդ Նաւակաւ կամ լաստափայտիւ մատչել. բայց տակաւին մասն ինչ Նորին կայր և 'ի սկիզբն դարուս՝ յորժամ ետեսն Պոֆորդ. և ասէ, խոշոր և անհարթ քարամբք զուգեալ, իբրև հարիւր կանգուն ընդ երկայնն (90 Զ.). յորոյ աւարտն կայր շինուած մի ստուար իբր 20′ քառակուսի, մյթս ունելով յանկիւնսն, և թուէր երբեմն կրել սիւն կամ անդրի մի. դիպող էր, ասէ, լինել և կանթեղակիր աշտարակ, այլ ոչ Նշմարի տեղի մատչելոյ 'ի գագաթնն. յատակն մեծաւ մասամբ փորեալ է կամաւ կամ 'ի Ներգործութենէ ծովուն։ Զբովանդակ երեսս կղզեկին գրաւէ բերդն ձուաձև կամ եռանկիւնի, ութ ոտնաչափ թանձր և 25′ բարձր պարսպօք, աշտարակս 60′ բարձունս ունելով 'ի մէն մի անկեանցն, և այլ հինգ աշտարակս ցածունս բոլորչիս ընդ մէջ Նոցին։ Ցարևմտակողմն է աւագ աշտարակն կամ դղեակն, յորոյ դրան վերայ ևս են հայերէն արձանագիրք։ Աւագ դուռն բերդին 'ի Հս. Մ. սրաձև կամարաւ և գեղեցիկ շրջագարդ քանդակաւ մուծանէ 'ի գաւիթ մի կամարակապ։ — Գրեաթէ խսպառ աներծ մնացեալ է ամրոցս այս՝ անմատոյց հինից աւերողաց գործեալ 'ի ծովէն. բայց չկան 'ի Նմին կարևոր շէնք, մանաւանդ թէ անկատար թուեցան Լանկլուայի՝ մէջն և շուրջն յերից կողմանց. յորմունսն երևին և տառք յունականք, որպէս* ΛON, *և լատինք* S. B. M. — M. A. B.*։ Ի միջավայր բերդին են կրկին ջրամբարք ընդարձակք փորեալք 'ի քարաժեռին։ Ի վերայ դրան դղեկին քանդակեալ է մեծ խաչարձան, և 'ի վերոյ երկու հայերէն արձանագիրք բարձրաքանդակք, ագուցիկ տառիւք, մին վերոյիշեալն՝ Լևոնին, որ ըստ օրինակի արձանագրութեանց մեծամեծ և կարևոր շինուածոց՝ զուգեալ է զայլ և այլ թուականս (զԱդամայ, զԱղեքսանդրի, զՔրիստոսի, զՀայոց, և այլն), որով աներկբայագոյն լինէր ամ շինութեանն. այլ ըստ ոչ բաղդի՝ ցարդ չեհաս առ մեզ զգոյշ օրինակ, զի յընդօրինակութեան Լանկլուայ յամի 1852, չիք և ոչ մի 'ի թուականացն անսղալ. թերևս ստուգագոյն էր Պոֆորդի գաղափարածն յամի 1812, այլ և այն վրիպեցաւ յինէն* [1]*։ Միւս արձանագիրն յերկայնաձև քառակուսի տերևաքանդակ շրջանակի՝ 'ի վեց մեծամեծ հատորս վիմաց քանդակեալ է 'ի չորս տողս, մեծագոյն տառիւք. յորում անուն թագաւորին Հեթմոյ յայտնի և թուական Զ ամին, թերևս 'ի Նոյն յաւելեալ եւրն, ըստ աղաւաղ ընդօրինակութեան Լանկլուայ* [2]*։ Զայս արձան լուսագրութեամբ հանեալ է և Նոր քննողաց Կիլիկիոյ, որպէս Նշմարի 'ի պատկերի (Թիւ 142), այլ ոչ քաջ որոշին տառքն, բայց յերրորդ տողին յայտնապէս ցուցանի այլափոխութիւն Լանկլուայ, զի է այսպէս,*

## *Սկիզբն ամրոցիս այս շինման...*

*Գտան և յոյն արձանագիրք և քանդակք 'ի բերդիս, այլ բերեալք այլուստ։ Ցարտաքին որմունսն՝ մանաւանդ 'ի հարաւակողմն՝ երևին ծակտիք կամ բացուածք 'ի ռըմբաձգութեանց պատերազմողացն 'ի վերայ կղզւոյն։*

*Կանգուն կան բազում մասամբ և ընդարձակ պարիսպք* Կոռիկոս *քաղաքի, յորոյ միջի Նշմարին և հետք ինչ հասարակաց շինուածոց, այլ առաւել յաճախ մեռելոց հանգըստարանք, պէսպէս ձևով շիրիմք յունական արձանագրութեամբք. յորս Նշանաւոր երևեցաւ հնագիտաց մաւսոլեան շիրիմ մի կիկլոպացի ոճով, բայց մանրագոյն քարամբք և 'ի վերայն խաչաձև յունական, և արձանագիր մի բաղանեաց Դիոնեսիոսի ուրումն Քրիստիանոսի կամ Քրիստոնէի։ — Ոչ յիշին Նշանք եկեղեցեաց բաց 'ի միոյ աւերակէ, և ոչ հայկական յիշատակք, զի վաղ ուրեմն լքեալ և ամայացեալ թուի տեղին, մինչ բերդօրայքն շինէին և Նորոգէին։ Մաշոյ՝ որ յելս կոյս ԺԴ դարու գրէր զքերդուածն յԱռումն Աղեքսանդրիոյ, « Էր երբեմն, ասէ, լեալ անդ քաղաք մեծիշխան, այլ արդ խսպառ աւերեալ հիմնայատակ տապաստ դնի ».*

« Jadis y ot une cité
Qui fu de grant auctorité;
Mais elle est toute confondue,
Destruite à terre et abatue [3] ».

*Սակայն կամ մասն մի հին քաղաքին կամ բերդքն՝ հարկ է թէ բնակեալ էին բազում երդումարդով. զի ոստան էր միոյ 'ի մեծագոյն պարոնայց տէրութեանն Հայոց, որք և խնդրէին երբեմն եպիսկոպոս հաստատել 'ի Նմին։*

**134.** Օշին *արքայեղբայր՝ առաջին Հեթմեան տէր Կոռիկոսի՝ որ ունէր ընդ ձեռամբ այլ ևս ամրոցս, որպիսիք էին Մանիոն և Միտիզոն, Կանչի, և այլք մանունք, մեռաւ յամի 1265 'ի 26 դեկտեմբերի, և թաղեցաւ 'ի Տարսոն « առ պատուանդանի հօր իւրոյ »։ Ցաջորդեաց զնա որդի իւր Գրիգոր՝ պատուեալ Պայլ աւագութեամբ* [4]*, զորոյ յիշատակ ոչ գտի 'ի պատմութեան. բայց 'ի մատենի միում գրելոյ յամի 1280, 'ի յիշատակարանի ուրեք եղծեալ անուամբ երևին յետին տառք ՆՍ, Նշանակ պայլ*

1 Պոֆորդ չէր հրատարակեալ զայսոսիկ 'ի գիրս իւր, այլ պահէր 'ի ցոյց հետաքննողաց, որպէս ծանուցանէ յէջ 257 գրոցն. դէպ եղև ինձ յետ քառասուն ամաց (1852) տեսանել և հարցանել զծերունին 'ի ծովային պաշտօնարանի անդ իւրում 'ի Լոնտոն, այլ ոչ ևս յիշէր ուր թողեալ էր զարձանագիրսն։ — Իսկ Լանկլուայի խառն 'ի խուռն և բազմասխալ գաղափարածն այս է.

**« Ի ՈԼԷ քրիստոնեից? ՌՄՁ եւ յԱդամ...**
**Ի յԱլէկսանդրոս թս։ Եւ Հայոց.. ՃԿ**
**Ի.. Սելեւկիաց, ՈՀԸ. եւ.... Ն**
**.. Պուրեն շինեալ Լեւոնի թա(գ)աւորի..**
**... սնդո.. որդոյն Պարոնին... յլ Ե.. »։**

Մարթ է կարծել խարխարեալ և տեղափոխեալ զշարս քարանցն, և այնու անջատեալ և բառիցն և առաւել ևս խրթնացեալ բանին։

2 **« Ի թուակա(նիս) Հայոց Զ ամին եւ եւրն... թիւն**
**Ի բարեպա(շտ) թագաւորին Հեթմ... թագէ**
**... ամրոց... Սլթանին. շինել**
**Մեծ իշխան Հեթմոյ Ո..... »**

3 Machaut. — Նոյն ինքն Մաշոյ յիշեալ զկղզեակն՝ համարի այսր եկեալ Յասոնի 'ի խնդիր Ոսկի գեղմանն, այսպէս ասելով.

Et devant Coure a une yslette,
Où jadis ot une villette.
L'isle est apellée Curcos:
Et dest li lieus, bien dire l'os,
Où enciennement Jason
Conquist la dorée toison.

4 Այսպէս գրէ Հ. Չամչեան, ոչ գիտեմ յորմէ յիշատակարանէ հանեալ. բայց սխալէ ասելով զնա որդի Օշնի տեառն Լամբրունի։

իշխանութեան, և սմա թուի պատշաճել. «Ջ......լ..լն » գործի Աւշնի Տեառն Կոռիկոսոյ եւ եղբաւր Թագ. Հա. » յոց Հեթմոյ Առաջնոյ գԹ... զստացող գրոցս յիշեցէք 'ի » Քրիստոս[1] »: Ցետ այնր Թուականի յաջորդեալ է եղբայր Նորա՝ հռչակաւորն Հեթում Պատմիչ և սպարապետ, և յետոյ միանձն և կանոնիկոս, հետևող շաւղաց կրկին հօրեղբարցն՝ Հեթմոյ Թագաւորի և Սմբատայ Գունդ. ստապլի և համանուանն իւրոյ և ժամանակակցի Հեթմոյ Բ, ըստ քաջութեան, ըստ գրասիրութեան և ըստ կրօ. նասիրութեան. զորս յայտնեն, նախ, մատեանքն գր. րեալք վասն Նորա և հասեալք մինչև առ մեզ. որպիսի է տօմար մի յօրինեալ 'ի Ստեփանոսէ երիցուէ՝ որդւոյ Ցովհաննու քահանայի, «Հրամանաւ Թագազարմ իշ. » խանին իշխանաց, բարեպաշտին և աստուածասիրին » Հեթմո Տեառն Կոռիկոսոյ... 'ի Թուականիս Հայոց 'ի » ՉԼՁ ». 1287. այս մատեան պահի արդ 'ի Վատիկան




142. Ցիշատակարանք Բժշկարանի գրելոյ վասն Հեթմոյ Պատմչի, յամի 1294.

Հռովմայ: — Բժշկարան մի մագաղաթեայ, Թարգմանեալ մասամբ յարաբացի լեզուէ, մասամբ յօրինեալ 'ի Մխի. Թարայ Հերացւոյ, գրեալ յամի 1294, հրամանաւ Նորին Հեթմոյ ձեռամբ ծերունւոյ Մրտիշցի Վարդի. 'ի սկզբ. բան, 'ի միջի և 'ի կատարածի գրոցն՝ կարգէ զյիշատա. կարանքս Նմանատիպ լուսագրեալս, յորոց հաւաստի՝ զի 'ի Նմին միում ամի սկսեալ և աւարտեալ է գրչութիւն մատենին: Երկրորդ, Նորին ինքեան Հեթմոյ ինքնագիր գործք. յորոց 'ի ձեռս մեր հասեալ է և տպագրութեամբ հրատարակեալ, «Ժամանակագրութիւնք երեք հարիւր և » մէկ ամաց կարճ 'ի կարճոյ, հաւաքեալ 'ի զանազան » Պատմութեանց, հայ, ֆռանկ և ասորի. շարագրեալ » Պարոն Հեթմոյ տեառն Կոռիկոսոյ. և արար զայս » բանք 'ի Թուին Հայոց » ՉԽԵ, և յամի մարդեղու. » Թեան Տեառն ՌՄՂԶ » (1296). բայց գոյ 'ի Նմին և Նորագոյն յիշատակ սպանման Հեթմոյ Բ և Լեւոնի Գ.,

1 Մատեանն յորում գտանի յիշատակարանս այս՝ է գիրք Նորոց Կտակարանաց, և պահի 'ի Լոնտոն, 'ի Բրիտանեան Մուզէոնի:

յամի 1307։ Դուզնաքեայ ինչ է գրուածս, այլ զի յերից լեզուաց պատմչաց քաղեալ է, ցուցանէ զհմտութիւն հեղինակին և զընտրութիւն. և ոչ է անդէպ յուսալ, թէ ոչ միայն զայս դոյզն ինչ ժամանակագրութիւն, այլ և զդէպս յիշեցելոցն՝ երկարօրէն ևս քաղեալ և գրեալ էր։ — Այլ հռչակագոյն գործ նորա՝ որոյ բնագիր հայ տակաւին ոչ է յայտնեալ, և կարծի գոլ յէջմիածին, է թելադրեալն 'ի նմանէ 'ի լեզու փռանկաց՝ յամի 1307, 'ի Բուադիէ քաղաքի այնր աշխարհի, առ Ֆալկոն ոմն, և յեղեալ յայլմէ փռանկէ (Jehan d' Ypre) 'ի լատին,



143. Արձանք յաշտարակի Ծովային բերդին Կոռիկոսի. (Տես յէջ 336).

Պատմութիւն Մեծ Խանին Թաթարաց, (L' Hystoire du Grand Empereur de Tartarie), կամ Ծաղիկք Արևելեան պատմութեանց, (La Fleur des Histoires de la terre d' Orient), և 'ի լատինն Liber Historiarum partium Orientis [1], որպէս մակագրի 'ի խորագիրս, և բազում անգամ տպագրեալ է անդստին յառաջին կիսոյ ԺԶ դարու.

1 Խորագիրքն փռանկ և լատին՝ են ըստ տպագրութեանց 1529 ամի. լատինն Haython կոչէ զՀեթում, փռանկն Haycon կամ Aycome. սա յաւելու և ծանօթութիւն զՀեղինակէն. Et fut ce traicté premierement fait en latin par tres noble et tres hault homme Monsieur *Aycone* Seigneur de *Courcy*, chevalier et nepveu du roy d' Armenie la Grande: le quel Aycone apres ce qu' il eut longtemp suivy les armes avec son oncle et veu presentement toutes les choses que il racompte en cest livre, se rendit en l' ordre de Presmostre moyne blanc, au royaume de Chipre en l' abaye de l' Epiphanie en laquelle il fist cest liure come dit est: puis l' an de grace mil trois cens et dix et fut ce livre translate de latin en francoys par frere Jehan de Long dit de Ypre moyne de l' abbaye de Saint Bertin en Saint Omer de l' ordre de Saint Benoit de l' Euesche de Therouenne, en l' en de l' Incarnation Notre Seigneur mil trois cens cinquante et ung. — Գտանին և այլ զուգաժամանակ տպագրութիւնք 'ի փռանկ լեզու՝ սակաւ ինչ զանազանեալ շարադրութեամբք. նոյնպէս և անգղիարէն տպագրեալ 'ի միջոցի 1520–30 ամաց. ևս և իտալերէն 'ի նմին ԺԶ դարու. Թող զյետին դարուց պէսպէս տպագրութիւնս։ Կարևորն ընաւից՝ բնագիրն Ֆալկոնի, որ է թելադրեալն 'ի Հեթմոյ, անագան ուրեմն 'ի լոյս ընծայեցաւ, սակաւ ամօք յառաջ (1877) 'ի Բարիզ, երկասիրութեամբ Լուդ. Պաքէրի, (Louis de Backer), 'ի 124=255 էջս մատենին՝ զոր անուանեաց L' Extrême Orient au Moyen-Age. Ի յառաջաբանին վկայութիւն բերէ 'ի բանից Բօլէն Բարէ (Paulin Paris) գրագիտի, որ հարկաւոր յոյժ համարէր զայն հրատարակութիւն առ 'ի պարզել զմթութիւնս ինչ բանից մեծի ճանապարհագրին վենետկեցւոյ (Պօղ-Մարկոսի). « Le livre d' Hayton se lie utilement à l' étude du livre du grand voyageur Venitien Marco Polo, et peut servir à dissiper quelques-unes de ses regrettables obscurités... Cette Relation curieuse parait avoir excité un vif intérêt en Europe et surtout en France, à une époque où cependant la passion des Croisades était entièrement a-

quatre parties. La premiere partie parle de la terre d'Asie qui est la tierce partie du monde, et divise queins royaumes a en celle partie, et comment l'un royaume marchist a l'autre et quel gent y habitent. La seconde partie parle des emperours et des roys.

*Այլազգ եղև քաղաքավարութիւն և վախճան պայազատին և անդրանկանն Հեթմոյ, որ յանուն հաւուն կոչէր Օշին. այր քաջ, մեծոգի և աշխարհաշէն, այլ յոյժ փառասէր, որով և սխալեաց և տուժեցաւ չարաչար. յաւուրս թագաւորութեան համանուան իւրոյ Օշնի 'ի չափու կայր, և ծառայէր նմա հաւատարմութեամբ, որպէս երբեմն (1318) երեք հարիւր արամբք եհար զհրոսակս Խարամանեաց առ կանգարային Պոմպէուպօլսոյ։ Թագաւորն Օշին 'ի ժամ մահուանն (1320) սմա յանձնեաց զորդւոյ ժառանգ իւր Լևոն Դ., վասն որոյ կոչեցաւ նա՝ Օշին Պայլ, և ետ զդուստր իւր Զապէլ կամ Եղիզա 'ի կնութիւն մանուկ թագաւորին, և ինքն էառ զմօրու նորա՝ զդշխոյն Յովհաննա (կամ Եաննէ) դուստր Փիլիպ-*



145. *Շիրիմ 'ի Կոռիկոս.*

*պոսի իշխանի Տարենտայ, որով առաւել եղև քան զթագաւորահայր, և զեղբայր իւր Կոստանդին՝ կարգեաց գունդստապլ (սպարապետ). առ փոքր փոքր կալաւ և զմեծ մասն երկրին՝ իբրև 'ի միձակ սեփական. որում մարթ է 'ի վկայութիւն առնուլ և զմակագիր Թղթոյ Եսայեայ վարդապետի Նչեցւոյ առ նա. « Քրիստոսիւ զօ-*
*» րացեալ ամենայն քաջութեամբ և իմաստութեամբ,*
*» Թագաժառանգ զարմի ծնունդ, Գունդ (կոմս), և կող-*
*» մնակալ բոլոր մասինդ Սովրիոյ (Իսաւրիա), և մեծից*
*» մեծանիստ շինեալ սանդ Տարսոնի, (Պարոն Հե-*
*» թում[1]), պարոն Պայլ և մարզպան ամենայն Հայոց*
*» Աշխն »։ Այսու թղթով ծանուցանէ Եսայի, զի զբ-*

*բեալ էր Օշնի առ նա վասն հաւատոյ խնդրոյ և միաբանութեան ընդ Լատինս։ — Այսպէս առաջին անձն հրամայէր Օշին 'ի թագաւորութեանն Լևոնի Դ. և մինչ չև էր հասեալ սա 'ի չափ ինքնակալութեան, նա առաջնորդէր յարքունի հրովարտակս, և թուղթս ընդունէր 'ի քահանայապետէն Հռովմայ՝ հաւասար պատուոյն գրելոցն առ թագաւորն. որպէս, արգահատականն գրեալ (յ'18 մարտի, 1323), յետ աւերման Այասոյ, և յայլում նուագի խրատուն օգնելոյ Հայոց։ Ի միում ևս 'ի թըղթոցն (21 յուլ. 1322) հարցանէր Յովհաննէս Պապ ըղնուիրակ իւր՝ (Պետրոս պատրիարք Երուսաղեմի), քննել թէ իցէ՞ Կոռիկոս բաւական ընդարձակ՝ առ 'ի լինել թեմ եպիսկոպոսական, որպէս խնդրէրն Օշին. թուի թէ ընդունելի եղև խնդիրն, և կարգեցաւ եպիսկոպոս 'ի Կոռիկոս, թէ և ոչ յերի 'ի մերայոց. այլ զի նոյն քահանայապետ յամի 1334 փոխադրէր յաթոռ Կաֆայի զեպիսկոպոսն Curquensis կոչեցեալ, թուեցաւ ոմանց առեղծն այն զԿոռիկոս նշանակել։ Որպէս կայ և աւանդէ Տարոնէ՝ Լևոնի վերջնոյ յամի 1374 կոչեցեալ առ ինքն զեպիսկոպոս Կոռիկոսի՝ վասն միջնորդելոյ առ բերդաւադսն՝ տալ ինքեան նաւ մի, զի եկեսցէ 'ի կղզւոյն։ Նոյն քահանայապետ այլով թղթով (17 մարտի, 1323) տայր քննել թէ պարգևեալ իցէ Լևոնի առ Օշին՝ զՊայեռօն բերդ։ Նոյն դարձեալ երկիցս, յամս 1326 և 1329, կոնդակաւ շնորհեալ է նմա ներողութիւն յանցանաց՝ 'ի ժամու մահուան. այլ ոչ գիտեմ թէ եհաս 'ի ձեռս նորա կոնդակն երկրորդ՝ 'ի դէպ ժամանակի. քանզի բազում մեծութեամբքն յօրացեալ Օշնի՝ համարձակօրէն վարէր նաև 'ի զարգանալ թագաւորին. որոյ 'ի վերայ հասեալ ձեռներիցութեանն, թերևս և դրդեալ քսութեամբ յաջողկաց, 'ի սկիզբն 1329 ամի « 'ի քանեակցն յունվարի*
*» յանկարծ աւարեալ պատանին Լևոն թագաւորն Հա-*
*» յոց (որ էր յայնժամ ամաց քսանից) իշխանք՝ սակա-*
*» հեծելով վասն բանելոյ զունդին Կոռիկոսի և իւր եղ-*
*» բօրն », Կոստանդնի. և կալեալ զերկոսին ևս, զմին 'ի սահմանս Ադանայ, զմիւսն 'ի գեղջն Տղայ Լևոնի, « բե-*
*» րին յԱդանա, և 'ի մէկ օրն սպանին զերկուսն. սպա-*
*» ռաք զայս զրին, թէ յետ մահուան Օշին թագաւորին՝*
*» շատ բերդեր այրանք առին, որ չէր իւրեանց սահմա-*
*» նով սպրանքը. և այլ շատ բան արարին փոքր մարդիկն*
*» վասն նոցա, ինչկի սպանել տուին[2]. որ զճշմարիտն*
*» Աստուած գիտէ. և Լևոն թագաւորն անմեղ է 'ի նո-*
*» ցա արենէն (ըստ Պատմչին, որ և յաւելու). որոց ո-*
*» ղորմեսցի նոցա Աստուած, և պահեսցէ երկար ժամա-*
*» նակաւ զթագաւորս մեր Լևոն »։ — Յիշատակ մի մնայ մեզ 'ի Կոստանդնէ աստի սպարապետէ, գեղեցիկ գիրք մի Կցորդոց, այսինքն քաղոյր եղանակաւոր երգոց ժամասացութեան, ճոխազարդ գրեալ՝ յամին 1325, յորում փախճանեցաւ ՀԵԹՈՒՄ որդի Օշնի, սակաւուք զինի զրութեան յիշատակարանին՝ որ 'ի հանդէպս (Թիւ 147)։*

*Յետ սպանման Օշնի՝ թուի թէ իրաւամբք յարքունիս գրաւեցաւ Կոռիկոս ընդ այլոց կալուածոց. քանզի և*

[1] Յօրինակի Թղթոյն միջանկեալ կայ և անուն այս, Թերևս որդի Պր. Հեթմոյ գրեալ էր, զի 'ի խորագրին և ստորև գրեալ Եսայեայ զբանս « Ընդդէմ Պր. Հեթմոյ Նկուաինոցըն »։

[2] Նորին եղբայր Օշնի ԿԻՒՐԻԿՈՍ տէրն Կոռիկոյ, յամին 1320 հարկանելով զառագաստ Եգիպտացւոց 'ի սահմանս Այասոյ՝ « խոցեալ յանօրինաց... մեռաւ », ըստ ժամանակագրի պատմչին։



Ci commence le liure de la fleur des hystoires
de la terre de orient. le quel frere hayton
seigneur du core cousin germain du roy
de armenie cōpilla par le commandement
du pape climent quint. [illegible] mil trois
cens sept en la cite de poitiers.
Cestuy liure est deuise en quatre parties. la premiere
partie parole de la terre daise qui est la tierce partie
du monde. et deuise quans royaumes a en celle partie et
comment lun royaume marchist a lautre. et quel gent y
habitent.
La seconde partie parole des empereurs et des roys

146\. Հեթում տէր կոռիկոսի մատուցանէ զծաղիկ Պատմութեան Արեւելից առ Կղեմէս Ե.

*ժառանգ Նորա, որպէս յիշեցաւ, վաղամեռիկ եղեալ էր՝ սուգ մեծ Թողլով Նմա, զի Թուի Թէ չունէր այլ զաւակ արու, քանզի և չյիշի իսկ ։ Ապա պարգևեաց Լևոն զԿոռիկոս՝ Պետռւևդի Լուզինեան, որ փռանկ 'ի հօրէ (որդի Ամաւրեայ արքայորդւոյ Կիպրոսի), հայ էր 'ի մօրէ, 'ի Զապլունայ դստերէ Լևոնի Բ, և եղբայր Կիտ Թագաւորի, (ընդ որում և սպանաւն յամի 1344, յ' 17 Նոյեմբերի)։ Երիւք ամսօք յառաջ վախճանեալ էր Յովհան (Ճիւան) եղբայր սոցա 'ի Սիս. զորոյ զկին (Սուլտան՝ դուստր Վրաց Թագաւորի) երկոքումբք դեռաբոյս որդւովքն (Պեմունդ և Լևոն, որ եղև վերջին Թագաւոր Հայոց), աքսորեաց Կոստանդին Թագաւոր 'ի Կոռիկոս. կասկածեալ դչխոյին եԹէ կամիցին սպանանել զինքն և զմանկունսն, գաղտ փախեաւ 'ի Կիպրոս։ Նորագիւտ փռանկ պատմիչն (Տարտէլ) որ զայսոսիկ ծանուցանէ, յաւելու ևս, եԹէ Կոստանդին չատացեալ լեռնային մասամբ աշխարհին՝ ապախտ արար և զԿոռիկոսի. իսկ բնակչացն զանգիտեալ Թէ արդեօք անկանիցին 'ի ձեռս Եգիպտացւոց՝ անձնատուր եղեն 'ի Կիպրացիս, յապահովեալ զկարևոր տեղին այն յերեսաց այլազգեաց՝ ցդար մի ևս ժամանակի։*

*Կոռիկոս Նշանաւոր էր ոչ ամրուԹեամբն միայն, այլ և վաճառաշահուԹեամբ, Թէ և ոչ յոլովք գտանին զայսմ շնորհէ յիշատակք. այսպիսի է դիւանական գրուած մի 'ի Գենուա՝ յամի 1268 ('ի Հոկտ. 22), յորում ասի Լուգեդոյ Կրիմալտի ծովապետի Գենուացւոց գերեալ 'ի նաւահանգստին Կոռիկոսի* (in porto Curchi) *Նաւ մի վաճառաբարձ այլ և այլ ազգաց, ընդ որս էին և Հայք, Մոնսոր? Այասցի՝ ծորտ արքունի և գործակալ այլոց, Վասակ և Վահրամ, Պարսամ, Միքայէլ, Դաւիթ և Յովսէփ Ազիզ և Մուսաևտ? եղբարք Այասցիք. որոց ամենեցուն հատուցին Գենուացիք տուգանս՝ 22,797 բիզանդս հայկականս և 7 քարտէզ, և ընկալան մուրհակ անդորրագիր յԱյաս, 'ի 6 Հոկտ. 1271 ամին, յարքունի պաշտօնատան, վկայուԹեամբ Պարոնայց Սերէ (Սմբատայ?) և Միքայելի[2]։ — Յիշին և յետ այնր յաւուրս Լևոնի Բ և ՀեԹմոյ Բ վաճառական Նաւք աւերմունս 'ի Կոռիկոս. և յատուկ ձեռագործ մի Կոռիկոսի, այն է Կապերտ,* (Carpita di Curcho), *յորմէ հակ մի բարձեալ էր յամի 1294–5 մարսիլիացի վաճառականն Պետրոս Գադրըլէնկ* (Quatrelingue), *որպէս յիշի յայլում դիւանական գրուածի* (1295, *սեպտեմբ.* 2) *և ընդ այլոց ընչիցն կողոպտեցաւ 'ի Վե-*

**147. Եցրդոց գիրք գրեալ յամի 1325 վասն Կոստանդնի գունդստապլի [1].**

1 Յամի 1603 Նորոգեալ է գիրքս՝ Սրապիոն վարդապետ, որ և 'ի Նմին ամի կաթողիկոսացաւ ։

2 . . . « Monsor Erminium hominem regis Armenie et habitatorem Ayacij in nomine suo proprio et nomine Vasachi, Baharam, Barsomi, Michaelis, Macheroti, David et Joseph Azizi et Musant fratrum de Ayacio, hominum dicti Regis, quorum dicit se procuratorem. — Այսպէս գրի 'ի Նօտարական բանին 'ի Գենուա, յամի 1268, 'ի 22 Հոկտեմբ. իսկ յամի 1271, 'ի 6 Հոկտ. ստորագրեն յԱյաս, Mansor, Vasac, Daud, Barsoma, Vaaram, Phatios (Թադէոս?) Michel Mathias, Juseph Altusbochet?, Nichifor, Stefam Aachim, Soliman Benerazim, Georges Musant, Abdolazis, *յայտ է Թէ յետինքդ Ասորիք և Արաբացիք էին* ։ — Mas Latrie, *Hist. de Chypre*, II, 74-9.

Նետկեցւոց չորից բերդանաւուց, որք դադարէին 'ի Նաւահանգստի անդ Կոռիկոսի[1]: — Ձիրաւունս մաքսառութեան՝ զոր յիշեցաք 'ի վերոյ առ Լեւոնիւ Մեծաւ, պահեալ էին տեարք Կոռիկոսի և յետ այնր, որպէս զեկուցանէ բան մի Հեթմոյ Բ 'ի պարգևագրին առ Վենետկեցիս, յամի 1307, քաղաք կոչելով զԿոռիկոս[2]: Նաև 'ի թողուլ զայն Հայոց 'ի Կիպրացիս, յամի 1367 Սմբատ ոմն, (Tibat գրեալ), խնդրէր 'ի Պետրոսէ Թագաւորէ Կիպրացւոց զտեսչութիւն Կոռիկոսի, վասն շահու բաժիցն, որ համարէր ամի ամի երեք կամ չորս հազար տուկատ:

Յետ լքանելոյն Կոռիկոսի 'ի Կոստանդեայ Թագաւորէ՝ Գարամանն միաբանութեամբ ծովեզերեայ իշխողաց համակրօնից՝ առեալ և աւերեալ էր զարտաքին շէնս նորին. բնակչացն խոյս տուեալ ամրացեալ յերկոսին բերդսն՝ հրաւիրեցին զՊետրոս Ա Թագաւոր Կիպրոսի՝ յամի 1361. և թէպէտ ըստ վիպասանին (Մաշոյի) քաջ ամուր էր տեղին խրամով, բրգամբք և պարսպօք, այլ սուրն սայրասուր տապաստ արկ զամենայն, և կոտորեալ զպահապանսն նուաճեաց ընդ ձեռամբ[3]. տօն մեծ կատարեցին Կոռիկոսեցիք վասն ազատութեան իւրեանց, և մուծին օրհնութեամբ զառաքեալն 'ի Թագաւորէն վերակացու՝ Րոպերդ Լուզինեան՝ յեկեղեցին. ուր պատուէր հրաշագործ Պատկեր մի Աստուածամօրն[4], յորմէ ասի բժշկեալ և Գարամանին կուրութեամբ հարելոյ յաստուածային սաստէ: — Նոյն Գարամանք 'ի սկիզբն 1367 ամի վերստին ասպատակելով իբր քառասուն և հինգ հազար (?) արամբք, պնդեալ պաշարեցին և զբերդն Կոռիկոսի, յորմէ փութացաւ ոմն 'ի Հայոց գոյժ արկանել առ Պետրոս. և նա առաքեաց զեղբայր իւր Յակոբ. եկեալ սորա՝ ետես զԳարամանսն 'ի վերայ մերձակայ լերանց կանգնեալ մանգղիոնս՝ բաղխելով զբերդն. և պահապանն որ 'ի ներքս էր՝ վեցիցս հրեշտակս առաքեալ էր առ Թագաւորն հասուցանել օգնութիւն. էին Յակոբայ նաւք վեց զինեալք, վեց հարիւր թեթևազէն զօրականք, երեք հարիւր աղեղնաւորք, և ձիաւորք ոչ սակաւ, զորս յանուանէ թուէ Մաշոյ: Զայն տեսեալ Գարամանաց՝ զկէս բանակի իւրեանց իջուցին ընդ մէջ բերդին և լերինն. ելին և Կիպրացիք 'ի ցամաք (28 փեպր.) և մտին 'ի բերդն. զաւուրս երկու բաղխեալ ընդ միմեանս՝ անկան բազումք յերկոցուն կողմանց. և մինչ Կիպրացիք առաքեցին զնաւսն ածել զօր յօգնութիւն, Գարամանք մերձեցուցին զմանգղիոնսն 'ի բերդն. յայնժամ յերիս գունդս բաժանեալ բերդականացն՝ յարձակեցան, վանեցին զԳարամանս և առին զբանակատեղի նոցա, (7 մարտի). բայց յերկրորդում աւուր դարձան վերստին այլազգիքն, և սաստկապէս մարտուցեալ՝ ստիպեցան 'ի վերջոյ տեղի տալ: Թողեալ յայնժամ Յակոբայ պահապանս 'ի բերդին՝ դարձաւ առ եղբայր իւր: Երկար և մանրամասն վիպասանէ զդէպքս՝ Մաշոյ, 'ի հազար երկու հարիւր տողս: Այլ ոմն պատմիչ (Ստրամպալտի) յիշէ, զի մինչև եկեալ Կիպրացւոց՝ Գարամանք տիրեալ էին մեծի աշտարակի միոյ 'ի քարաբլրի, առ ջրհորովն[5]: Միւս ևս պատմիչ (Bustron) յաւելու, եթէ Գավալլի ոմն 'ի Կիպրացւոցն՝ կամեցաւ ապստամբել և տալ զբանալիս բերդին 'ի Գարամանս. իսկ Թագաւորին Կիպրոսի առաքեալ փաղփաղակի երեսունևերկու նաւս, կալաւ և գլխատեաց զդաւաճանն 'ի Սատալիա: — Յամի 1374 'ի սկիզբն ապրիլ ամսոյ եկն այսր 'ի Կիպրոսէ Լեւոն Լուզինեան հրաւիրեալ 'ի Թագաւորութիւն Հայոց, հանդերձ մարբն և կնաւն. պահապան բերդին՝ Կոստանդին տէր Պռականայի՝ որ մեծարանօք ընկալաւ զնա՝ և ըստ հրամանի Թագաւորին Կիպրոսի թոյլ ետ բնակել 'ի կղզւոջն, Նենգաւ կամէր մատնել Թուրքաց տիրողաց Տարսոնի, այլ ընդ այլոյ զրոյց առաքեալ առ Թագաւորն Կիպրոսի. որ և առաքեաց անդր նաւ մի ըմբռնել զԼեւոն և դարձուցանել 'ի Կիպրոս: Եկեալ և տեսեալ նաւաստեացն՝ զի արք զօրութեան էին ընդ Լեւոնի, դարձան յետս առնուլ միւս ևս նաւ զինեալ. մինչչև էր դարձեալ նոցա՝ Լեւոն նախ զբերդաւագն աղաչեալ՝ տալ ինքեան նաւ մի, և ոչ եղեալ լսելի, ապա զեպիսկոպոսն և զգլխաւորս բերդաւանին ողոքելով՝ ընկալաւ զոր խնդրէրն, և գիշերայն նաւեալ զերծաւ 'ի կողմանս գետաբերանոյն Սարոսի, և անտի 'ի Սիս: Յիշէ պատմիչն (Տարտէլ), զի էին յայնմ ժամանակի բաւական զօրականք պահապանք բերդին՝ աղեղնաւորք և բաղստրաւորք: Եւ ինքն Լեւոն յետ գերութեանն հարցեալ 'ի Փռանկաց 'ի Բարիզ՝ պատմէր և ասէր, եթէ յոյժ ամուր էր տեղին և անըմբռնելի, բայց եթէ մատնութեամբ կամ սովով[6]:

Յետ բարձման Թագաւորութեան Հայոց մինչ տակաւին 'ի ձեռս Կիպրացւոց էր Կոռիկոս, անցին ընդ այն ուղևորք ոմանք փռանկք, Գոմոն (De Caumont) յամի 1418, և Պերդրանտոն յամի 1432, որ կոչէ զայն բերդ ծովեզերեայ՝ 60 մղոնաւ հեռի 'ի Տարսոնէ: — Յամի 1448 կամ 1454 բերդապահն Փիլիպպոս Աթթար (Attar) մատնեաց զԿոռիկոս 'ի ձեռս Իպրահիմայ տեառն Գարամանի, և ինքն 'ի չքմեղս լինելով եկն 'ի Կիպրոս՝ իբրև 'ի գերութենէ զերծեալ. այլ զմատնչի դատաստան ընկալաւ գլխատութեամբ, ընդ նմին և այլ գլխաւոր պաշտօնեայքն՝ Հայք և Կիպրացիք: Իսկ Գարաման զանգի-

1 Ի նմին հակի էին և Ցփոփ ԿՈՐՄԵԱՑ, Ballam unam Cama(lo)torum de *Cormi* et Carpitarum de Curche, և միանգամայն արժէին 150 բիզանդ սատակին: — *Cartulaire*, 164:

2 Vede un' altro esempio: lo Curcho che è una citate la medemo se paga lo dreto. — *Cartulaire*, 177.

3 MACHAUT. — La prist, par force et par maestrie,
Un chastel qu' on appeloit Courc.
Si vous en dirai brief et court:
Li chastiaus fut subjet au Turs,
Grans et puissans, fors et seurs
De fosséz, de tours, de muraille.
Mais à l' espée qui bien taille
Versa tout, comble et fondement.
Là se porta si fièrement
Que tout fu mort, quan qu' il trouva.

4 ՍԴՐԱՄՊԱԼՏԻ:

5 Trovarono il castello assediato con gran multitudine di Turchi, e havevano preso la Torre, che era fabricata sopra la rocca, appresso il pozzo, fuori del Castello. — STRAMBALDI.

6 Adonc fut demandé au Roi ... Et cette ville de Courch, en Arménie, est-elle forte? — M' aist Dieu, ois, dit le roi d' Arménie, elle ne fait pas à prendre si ce n' est pas long siége ou qu'elle soit trahie; car elle sied près de mer à sec, et entre deux roches, lesquelles on ne peut approcher; et si est Courch très-bien gardée. » — FROISSARD, ՖՐՈՒԱՍԱՐ:

տեալ 'ի սուլտանէն Եգիպտոսի՝ եթող 'ի նա զանառիկն Կոռիկոս․ յորմէ՝ յետ ոչ բազմաց կորզեցին Օսմանեանք․ իսկ Գարամանեաց միաբանեալ ընդ Վենետկեցիս յամի 1471-2 պաշարեալ և ռմբակոծեալ, իբրև կալան զարտաքին պարիսպն՝ անձնատուր եղեն Թուրքք։ Յովսափատ Պարպարոյ մի 'ի վենետկեան պաշտօնէից և դեսպան Նոցին առ Ուզուն Հասան տէր Պարսից, ստորագրէ աստանօր զբերդն՝ ըստ որում 'ի վերդ յիշեցաւ։ Այլ նշանակելի է 'ի բանսն և այլ իմն բերդ՝ յարևմտակողմն բուն բերդին Կոռիկոսի, բաղխտրաձիգ մի հեռի, որ և 'ի մնացուածոց աւերակացն գուշակիւր կարի ամուր և վայելուչ գոլ, իբր երիր մասամբ մղոնի ունելով շրջապատ. 'ի վերայ դրանց սորին առէ զհայերէն տառսն անընթեռնլիս։ Իսկ զբուն բերդն՝ առէ մասամբ 'ի քարաժեռի և մասամբ առ ծովեզերբ, և զառաջին մասնն ստորագրէ, ոչ յիշելով ուրոյն զծովաբերդն։ Այսէ և զսահմանս բերդին լեռնոտս և քարուտս նման խտրից, բայց զերկիրն բարեբեր ցորենով և բամբակաւ, տածելով և անասուն շատ, մանաւանդ արջառ և երիվար, և պտուղ ամենազան։ Ինքն գրէ զանուն բերդին Churco, որպէս և այլ Իտալացիք, նաև Curco և Chourco․ Փռանկք՝ Curc, Courc, Court, Cort, Courcy․ լատինագիրք՝ Curcus, Culcus, Culchus, Corc․ — Մինչև յետ կոյս ԺԷ դարու՝ ոչ միայն բնակեալ 'ի Հայոց՝ այլ և եպիսկոպոսանիստ Հայոց ցուցանէ զԿոռիկոս, եւրոպէացի ոմն գրիչ եկեղեցական, այլ ինձ երկբայելի Թուի [1] ։

Զտեղագրութիւնս Կոռիկոսի կնքեսցէ յիշատակ մի միանգամայն եկեղեցական և ուսումնական, բանիւք յետին քաջ մատենագրի հայերէն դպրութեանցս ծանուցելոյ, և մեծի բանասէր հռետորին՝ Յովհաննու Եզնկացւոյ, որ Թուի յամենայն նշանաւոր եկեղեցիս և յակումբս երկրին Սիսուանայ՝ լսելի արարեալ զճարտարաբան լեզուն․ ըստ այսմ՝ հրաւիրեալ և «'ի խնդրոյ Ստեփանոս վարդապետի Կոռիկոսցւոյ», որ է անշուշտ Նախայիշեալն երէց տոմարագիր, խօսեցաւ «Յորդորակ ասացուածի Եկեղեցւոյ [2] », ըստ խորագրին, (կամ 'ի Նաւակատիս եկեղեցւոյն կամ 'ի տօնի Տիրուհւոյ Աստուածածնի), որոյ յիշէ և պատկերն վերոյգրեալ, 'ի միաբանակեցաց վանս ուրեք, որպէս է գուշակել յունկնդիր հարցն և եղբարց և ծերունեաց. «Զի՞նչ քեզ ընծայս » արժանաւոր մեծի և անզուգական բարեաց առիթ մեզ » և պարգևատու և ամենունակ գանձուցն Աստուծոյ » շտեմարան, տուն և տեղի և տաճար տենչալի, անտանելի բնութեան չափաւոր բնակութիւն, խորան կառուցեալ յանշնչական արձանաց... Դու մայր հոգևոր, » խորհուրդ երկնաւոր, պայծառ և լուսաւոր, Տիրամօր » անուամբ յորջորջեալ, Աստուածածնի կուսին Պատկեր » նկարեալ, (և այլն)..։ Զոր յուսայի և որում ըղձայի՝ ահա » 'ի նոյնն ժամանեցի. զդրունս վերնոյն Երուսաղեմի » տեսի. 'ի ծփանաց ծովու աշխարհիս առ նաւահանգիստն ժամանեցի. զշահ վարձոյս իմոյ 'ի պատիւ փառաց քոց ընծայեցի. զպտուղ վաստակոց իմոց և քըրտանց՝ երախտիս քեզ նուիրեցի. զստացուածոց իմոց » տաստանորդ՝ հանգոյն երկնի՝ մատուցի։ Ընկալ, մայրդ



148. Եյեւսա = Այաշ.

[1] Il suo popolo costa di Christiani e d' infedeli: vivono quegli sotto il governo d' un vescovo dependente dal Patriarca Armeno. — Terzi, *Siria Sacra*, 1694.

[2] Փափագելի է գիւտ ճառիս՝ որոյ լոկ վերջաբան գոյ առ մեզ։

» հոգևոր, և հաճոյասցին քեզ փոքունք և նուազք յու-
» գույ տկարէ. ըստ մեծութեան քում ոչ արժանաւորս
» կամ զուգականս և համանմանս, և ըստ համեմատու-
» թեան կարի՝ ոչ առանց երկանց և քրտանց. այլ 'ի փոյթ
» սիրոյ՝ խառնեսցի և բարեմտութիւն հարց հոգևորաց
» և պատկառելի ալեաց ծերունեաց և եղբարց հաւատա-
» կաց և ազնուագոյն բարեկամաց. զի զօրասցի սիրոյ ձեր
» բազմալոյս ճառագայթ, և ցրուեսցէ զստուերատեսակ
» ծածկոյթն սիրոյ. և յայսպիսի լուսոյ ծագմանէ՝ ցուց-
» ցին գործք ձեր առ իս բարւոյ, 'ի փառս և 'ի գովու-
» թիւնս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յա-
» ւիտեան »:



149. Դրամ Եղեւսայ քաղաքի.

**133.** Փարսախաւ ճանապարհի ևեթ 'ի հիւսիսոյ արևելից Կոռիկոսի՝ կայ միւս հին տեղի, այժմեան Այաշ գեօղ, 'ի բարձրաւանդակ քարափին գեղեցկահայեաց 'ի վերայ ծովուն, որ 'ի հնումն քաղաք էր, կոչեցեալ Ելեւսա կամ Եղեւսա, 'Ελεούσα, 'Ελαιοῦσσα, և յետոյ անուանեալ Սեբաստէ, Σεβάστη, Sebaste, 'ի պատիւ Գեմետրեայ դիցուհւոյ: Ի սկզբանն կղզեակ մի էր բարձրաժայռ մօտ 'ի ծովեզրն, ուր Արքեղայոս Թագաւոր Կապադովկիոյ սակաւուք յառաջ քան զփրկչական Թուականն՝ կառոյց դղեակ մի, տեղի զբօսանաց. բայց յետոյ աւազախից



150. Շիրիմ յԵղեւսա.

եղեալ միջոցին՝ զարդիս Թերակղզի է, և երևին 'ի նմա մնացորդք հոյակապ շինուածոցն. որպիսի է Տաճար՝ 'ի գահաւանդի բլրին, խառն ոճով և փորոգաւոր սեամբք, մէն իբր 4' տրամագծաւ և 7 1/2 բարձր, յորոց սակաւք կանգուն կան, այլքն Թուին 'ի սասանութենէ երկրի տապալեալք: Մերձ 'ի ծովափնն կայ մեկնակ շիրիմ մի բըրգաձև երկոտասանակողմն կատարաւ. 'ի վերայ դրանն երևէր արձանագիր՝ արաբացի կարծեցեալ և անվերծանելի մնացեալ յորոց տեսմնն: Ի հանդիպակողմն քաղաքին ևս կան շիրիմք և գերեզմանք վայելուչք կորնթացի սիւնաձևօք, անաղարտ պահեալք: Են և այլ բազում շինուածոց և Թատեր միոյ աւերակք. այլ վեհագոյն բնաւից է մեծ Ջրբեր ագուգայն, զի են և երկու փոքրագոյնք և այլ ևս ջրամբարք. փոքրագոյնքն յարևմտակողման քաղաքին պատին զքարաբլրովն՝ երկկարգ կամարօք. իսկ մեծագոյնն պատեալ զբլրովք և անցեալ ընդ ձորահովիտս 'ի վերայ կամարաց՝ ձգի մինչև 'ի գետն Լամոսայ՝ աւելի քան ընդ երկու փարսախ ճանապարհի՝ ուղիղ գծաւ: Իսկ 'ի միւս կողմանէ քաղաքին՝ սալայատակ պողոտայ մեծամեծ կոփածոյ վիմօք՝ հռովմէական ճարտարութեամբ շինեալ՝ տանի մինչև 'ի Սելեւկիա: — Կայսերական դրամք քաղաքիս՝ CEBACTHNΩN գրութեամբ գտանին ցժամանակս Վալերիանոս կայսեր. ինքնիշխանականքն ΕΛΑΙΟΥΣΙΩΝ գրութեամբ, որպիսի է և այս (Թիւ 149), կերպարանելով կին մի աշտարակախոյր, և 'ի հակակողմն զՀերմէս՝ քարոզական և սկահակաւ:

Միւս ևս և ոչ փոքր հին քաղաք՝ Լամոս՝ երիւք փարսախօք չափ 'ի հիւսիսոյ Եղեւսայ կայ 'ի ծովեզերին, առ բերանով համանուն գետոյ, որ և հզօրագոյն է քան զայլ գետակս Վարշագայ, բարեհամ ջրով, և ծանօթագոյն առ հինս, անկորուստ պահելով զնոյն անուն, միով տառիւ այլաձայնեալ՝ Լամաս, զի 'ի հնումն կոչէր Լամոս, և գաւառն Լամոսեան, Λαμῶτις, և անջրպետ համարէր երկոցուն Կիլիկեայց՝ Քարայնոյն և Դաշտայնոյն: Ըստ ցուցակութեան քարտից՝ երկայնաձիգ լերինք կամ լեռնոտք ձգեալք 'ի Տաւրոսեան բնալերանց՝ երկուստեք պարսպեն զձորահովիտն, Թեքնէ 'ի հարաւոյ, և Ջօմագ-հիսար 'ի հիւսիսոյ, տափարակ գագաթամբք, յորս աճեն



151. Շիրիմ յԵղեւսա.

կաղնիք և գիհիք. է 'ի հովտին քարայր մի բնական՝ ձեռագործ դրամբ՝ 'ի վաղուց մնացեալ, որպէս և հետք հին պողոտայի: Ընդ հովիտ լերանցս խաղայ գետն Լամոսի՝ յարևմտից, այլ ոչ են ստուգեալ ակունք նորա և ամենայն գիծ ընթացիցն, բայց զի անցանէ առ Օլուգաւ և Երկայն բրգամբն՝ զոր յիշեցաք 'ի տեղագրի Սարըգավագ վիճակի Քարայնոյն Կիլիկիոյ (յէջ 287): — Ոչ բազում ինչ փարսախօք 'ի հարաւոյ արևելից բրգանն և որ առ նովաւ մնացուածոց հին շինից, և մերձագոյն ևս յաւանն Լամաս՝ 'ի մօտից սորին՝ կան այլ ևս նշանաւոր մնացուածք հնութեանց, յանուանեալ տեղւոյն Գաննիտէյի ?, զոր Լանկլուա համարեցաւ լինել Նէապօլիս Իսաւրիոյ, և որ վասն զանխուլ դիրիցն ոչ է իսպառ աւերեալ, առ երի ունելով յարևելակողմն՝ զնիւթ շինուածոցն՝ այսինքն զքարահատս. յորոյ 'ի կէսն 'ի հարաւոյ կուսէ կայ դարանաձև փորած մի քառակուսի՝ երկու Զ. բարձր, 4 լայն, և 'ի նմին խորաքանդակ պատկերք վեց, երկուք բազմեալք, այլք կանգուն կալով և ձեռն 'ի կուրծս, հռովմէական տարազու զգեստուց. գոյ 'ի վերոյ և արձանագիր յոյն, այլ բազում մասամբ մաշեալ գոլով՝ ոչ յայտնէ զստոյգն, բայց Թուի մահարձան: Շիրիմ է և քառակուսի բուրգնն յիշեալ 'ի Ձիհաչէֆայ, բացեալ և յուղեալ յայլոց, մնան բեկորք դամբանացն. այսպէս կրկտեալ և խանգարեալ

են և այլ բազում շիրիմք և դամբանք յեզերս պողոտայի քաղաքին, քանդակս ինչ ունելով և կիսեղծ արձանս։ Հինգ եկեղեցիք յայտնեցան, որոց գլխաւոր 'ի հիւսիսոյ քարահատից, այլ միայն բեմն և կոնքն և այլ ինչ մա-



152. Աւերակք հին շինուածոց 'ի Գաննիտէլի ?

սունքն միան, և 'ի վերայ դրանն արձանագիր յոյն․ նըշ-մարին և նկարք յորմունսն։ Երկրորդ եկեղեցին 'ի Հր․ Մտ․ առաջնոյն փոքր քան զայն, այլ գրեաթէ ամբողջ կայ, բաց 'ի տանեացն․ փոքրագոյն ևս են այլքն և կոր-



153. Մահարձան յունական 'ի Գաննիտէլի.

ծանեալք։ Ի հարաւակողմն քարահատից կայ աշտարակ բարձր քառակուսի, մեծամեծ վիմօք շինեալ։ — Ի վե-րայ ճանապարհին որ աստի ցՆամոս՝ բազում և այլ շի-րիմք և բրգունք են և բերդք մանունք, որպէս Սու-վերա-նէ գալեսի, Ակելի քեօյ, ուր և կամարադուռն մի բարձր չորս Զ․, անհարթ և հնակերպ ոճով, յորձաքար վիմաց.

'ի վերայ սեմոց արեւմտեան դրանն քանդակեալ են ձեռք գործեալ ինչ, (տես յէջ 354), և տան ցոյցս հնութեան կանուխ քան զյունական արուեստ. 'ի նշանակն՝ երկու կոնաձեւքն՝ ըստ Լանկլուայ՝ յայտ առնեն զկոյրս Դիոս-



154. Ճինկեցի աւերակ 'ի Գամպիրուկի.

կուրեան եղբարց, և բովանդակն համարի նուիրեալ 'ի պաշտօն նոցին։ — Ցաճէ գետաբերանոյն՝ որ 22 մղոնաւ չափ հեռի է յարեւմտից Մերսինայ, կայ աւանն Լամաս, կամ Լամոս ըստ հնոց, Λάμος, Lamus. այսպէս առի կո-



155. Ադուգայք 'ի Լամոս.

չեցեալ 'ի լահամա փիւնիկ բառէ, որ է ասել ծամել, 'ի պատճառս մարդակեր հրէշի միոյ։ Չեգիտ ինչ նշանաւոր 'ի սմա՝ անգղիացի ծովապետն Պոֆորդ յամի 1812, այլ խնդրեաց 'ի Թուրք գեղջկաւագէն քննել զգլուխ երկայնաձիգ ջրարբի ադուգայիցն՝ որ յափանց Լամոսի գնայ մինչ յԱյաշ, և նորա հաճեալ զառաջինն՝ ապա մերժեաց։

Թերեւս նոյն ջրերս աղուգայի գլուխ է՝ զոր Չիհաչէֆ և Լանկլուա՝ յետ քառասուն ամաց եկեալ այսր (1853), իբր որիշ յիշեն յարեւմտից Լամոսայ, և երկկարգ, մին ըստ միւսն երկոտասան կամարք¹. զգեօղն ամայի ասէ առաջինն, իսկ Լանկլուա՝ 'ի նմին ամի թուէ տունս 25։

Սակաւուք 'ի բացեայ 'ի Լամոսէ յարեւմտից կուսէ՝ յանձուկ վայրի 'ի ծառաւէտ և յուռթագոյն հովտի՝ ամրանաց աւերակ բերդն Լամոսի (Լամոս գալէսի), բազում աշտարակօք պարսպեալ։ Թէպէտ սա ընդ ձեռամբ մերայոցս լինել 'ի կէս ԺԲ դարու, և նուաճեալ 'ի Մանուէլէ կայսերէ, որ և յետ այնր՝ էառ և զԿիստռամ բերդ, Κίστραμον². բայց 'ի մեկնել նորա՝ անկաւ դարձեալ 'ի ձեռս Հայոց, և էր կալուած Վասակայ հօր Թագաւորահօրն Կոստանդնի. յետ նորա ժառանգեալ թուի հարազատ նորին Հալկամ, զի սա կոչի տէր նորին յամի 1197, յորժամ ընդ Ներս. Լամբրունեցւոյ առաքեցաւ 'ի Լեւոնէ 'ի Կ. Պօլիս, և 'ի սկիզբն 1199 ամի գտաւ 'ի հանդիսի Թագադրութեան նորին։ — Զափամբք գետոյն Լամոսի, յամի 945, Կուրկուաս քաջ զօրավար Յունաց՝ հրամանաւ Կոստանդնի Պերփերոժենն կայսեր՝ դաշն խաղաղութեան կռեալ ընդ Արաբացիս տեարս Տարսոնի, արար փոխանակութիւն գերեաց։ — Յաջմէ գետոյն 'ի տափարակ գեղեցկաձեւ և յանմատոյց քարայրի՝ զոր Թուրքք Թիւֆէնկ-գալէսի կոչեն, 'ի խորշ մի ժայռին



156. Ագ-գալէ (Սպիտակ) բերդ.

նշմարին հեռադիտակաւ՝ ալեացն, երկու նկարք և փոքրկաւոր մի, զորս համարի Լանկլուա նուէր բաղդագիտ իշխանաւորի. այլ ըստ ասից Կիլիկեցւոյ տրամին, Հայոց բերդատերաց 'ի բարձման տէրութեան նոցին և 'ի ստիպելն թողուլ զկայանս իւրեանց, փակեալ զմուտս բերդի իւրեանց կախեալ է զգէնսն 'ի վերայն, առ նշանակէ հարստահարողացն առնելոյ։ — Ի հարաւոյ Լամոսի իբր կիսաժամու ևեթ հեռի՝ կայ 'ի ծովեզերին այլ բերդ, Ագգալէ կամ գալէ կոչեցեալ, երկու կոփածոյ քարակերտ շինուածովք։ — Գետինն անհարթ է և յոյժ քարաժայռ, այլ և կոպճոտ խառն որակաւ, յորս յոլով մնան կայարագոյն կրաքարի և գորշագոյն որձաքարի հատք։ — Երկու մղոնաւ անդրագոյն ընդ հարաւ՝ 'ի քարաժեռ ծովեզերին հատեալ է զոգաձև նաւակայան փոքր նաւուց, և ածեալ անդր աղուգայ ջուրց 'ի տափարակէ բլրի միոյ, ուր ջրամբարն է քարայիր, իբր 30 Զ. երկայն, կիսով չափ լայն, և 8 $1/2$ խոր, խուցք որմովք շրջապատեալ և գերանակապ ձեղուամբ։ Առ եզր սորին կանգնեալ է գղեակ մի, արդ աւերակ կամարաք, պատշգամբ, մեծ աշտարակաւ և շրջապատոյ անդուղք. երևէր 'ի նոսին և երկար արձանագիր յոյն, զոր ոչ ժամանեաց ընդօրինակել Պոֆիրոյ, որ ետես զայսոսիկ եօթանասուն ամօք յառաջ քան զայս։

Երրորդ ձոր և գետակ 'ի գաւառիս՝ 'ի հիւսիսոյ Լամոսի՝ է Սորգուն-տէրէ, անձուկ յոյժ և երկարագոյն, թուի իջանել 'ի Սուլեմա լեռնէ՝ որ կայ յարեւմտից Կուի-

1 Ըստ կամարացս անուանի վասն մի. զոր Լանկլուա անիմանալի անուամբ գրէ Saïsoulat-kaché.

2 Ըստ Կիննամեայ Բիւզանդացւոյ պատմչի. Դ. 17, որ յետ Լամոսի զսա առ նուաճեալ և ապա զԱնազարբայ. Βασιλεὺς δὲ τῇ ὑστραίᾳ ἐς τὴν Κιλίκων εἰσελάσας αὐτὸν μὲν εὗρεν οὐδαμοῦ, τὸ ἐν Λάμῳ δὲ φρούριον ἀμαχτὶ παραστήσατο ἐρυμνὸν μάλιστα ὄν. Εἶτα Κίστραμον καὶ Ἀνάζαρβον πόλιν εἷλε περιφανῆ. — CINNAMUS, IV. 17.

լուկայ, յարեւմտեան հարաւային ծայրի մեծի գաւռուցն Կիլիկիոյ, ընդ որ անցք 1954 Ք. բարձր՝ իջուցանեն յակունս գետոյս, յարօտս Աչըռ-օղլու Թուրքմանաց. յանուն գլխաւորի նոցին՝ Ալի-պէկ եայլասը կոչին արօտավայրքն բարձունք 2040 Ք., որոց հանդիպեցաւ Չիհաչէֆ յելս յունիսի 1853 ամին. անդ ճարակեն ամարանի ամիսս երիս միայն՝ վասն կանխահաս ցրտութեան: Ի նոյն սահմանս նշանակին եւ արօտք Այվալըր տոհմի, եւ 'ի միջակողմանս ձորահովտին՝ Գարաձա-եայլա արօտք: — Աստուստ մինչեւ 'ի ծովեզրն են գեօղք, Օղուճ, Քէփիէս (Կապս?), Ուղուռ, Տաղըր, Ալադա. եւ յաջմէ գետաբերանոյն՝ Լըռտավլու, որ եւ գլխաւոր գիւղիցն երեւի լինել. եւ մերձ նմին նշանակի Գալէ-քէօյ (Բերդագիւղ): — Ընդ մէջ կամ 'ի սահմանս Օղուճի եւ Գարաճա-եայլա հանգրուանի, 'ի մացառուտ եւ յապառաժուտ վայրի՝ երեւեցան աւերակք մեծի շինի մեծամեծ սեանց բեկորօք: — Ընդ մէջ Սօրգունի եւ Մէզէտլեայ նշանակին հինգ կամ վեց գետակք մանունք, յորոց մին կոչի Արպաշ, եւ առ բերանով նորին աւերակ համանուն բերդի, որ եւ Պուրպուր. միւս՝ 'ի հիւսիսոյ նորին՝ Խօմիշկ չայ. առ սովաւ եւս, կամ առ մերձաւոր վտակաւ եւ հուպ 'ի բերանն կայ աւերակ՝ Շէհիր-պօղազ նշանակեալ: Միւս եւս 'ի գետակացն կոչի Տէյիմէ:




157. Հին դրամ Սոլեայ.

136. Ի հիւսիսոյ հանուրց ձորակաց վիճակիս Վարշագայ, եւ 'ի հարաւոյ Կիւզէլ-տէրէ գետահովտի՝ առ որով Մերսին է, ձգի ձորակն Մէզէտլի կոչեցեալ յայժմուս, իջեալ 'ի ստորոտից բարձրաբերձ Թմբուկ (Տիւմպէլէկ) լերանց. 'ի հնումն կոչէր Լիպարիս, զնոր անունն առնու 'ի Մէզէտլի գեղջէ, որ մերձ 'ի գետաբերան նորին. 'ի վերոյ քան զայն՝ յաջմէն (յարեւմտից)՝ նշանակի Շէվլիկ (Շուըլիկ?) գիւղ. յահեկէն՝ Գարա-հաճիլի. եւ եւս վերագոյն առ աղբերակամբքն՝ Արդիլ, Գարաձա, եւ այլն: Ջանխուլ են վայրքս, որպէս եւ այլոց ձորակաց վիճակիս. բայց 'ի հնումն հռչակաւոր տեղիք էին 'ի ծովեզերին. յորոց մին յարեւելից գետաբերանոյն՝ մերձ 'ի Մերսին եւ յԱնքիալէ, Զեփիւռիոն կոչեցեալ քաղաքաւան. ուր գտանէին, ըստ Պլինիոսի[1], գլաւագոյն կապար-արծաթն՝ մոլուպդենա (molubdæna) կոչեցեալ, 'ի պէտս սպեղանեաց վիրաց: — Միւսն հռչակագոյն եւս՝ յաջմէ գետաբերանոյն յերի Մէզէտլեայ, էր Սոլի կամ Սոլէ քաղաք. Σόλος կամ Σῶλοι, Soli, Soloï, Solopolis, յիշատակեալ յաւուրց Կիւրոսի Կրտսերոյ. համարին ոմանք այսպէս կոչեցեալ 'ի պատիւ Սոլոնի՝ 'ի բարեկամէ նորին Փիլոկիպրոս Թագաւորէ: Բարգաւաճեալ էր յոյժ վաճառաշահութեամբ եւ ճոխութեամբ 'ի գաղթականէն Յունաց. յորոց՝ Արգիւացիք եւ Հռոդացիք համարին կանգնողք նորին. որք զի ոչ ուղիղ խօսէին զյոյն լեզուն՝ սովորութիւն եղեւ զամենայն ծեքաբանութիւն կամ ծռաբանութիւն՝ սոլիկեան կոչել (solécisme): Զպարսից կողմն կալեալ էին քաղաքացիքն առ Դարեհիւ վերջնով, վասն այնորիկ Աղեքսանդր արկ տուգանս 'ի վերայ նոցա երկերիւր տաղանդ, որ եւ նշանակէ զմեծ փարթամութիւն նոցին. եւ ինքն յետ Իսսեան մարտին եկեալ այսր՝ մատոյց զոհս Եսկուլապեայ, եւ կարգեաց խաղս Թատե-




158. Հին դրամ Սոլեայ.

րականս եւ կրթականս: Թէ եւ բարբառ Սոլեայ ոչ համարէր յստակ առ հինս, այլ ընծայեաց քաջ մատենագիրս, որովք մարթ էր պարծել քաղաքին. որպիսիք են փիլիսոփայքն Կլէարքոս ճեմական, աշակերտ Արիստոտելի, գրիչ վարուց նշանաւոր արանց, այլ գրուածն կորուսեալ է. — Կրանտոր, աշակերտ Քսենոփոնի, ակադեմեան իմաստասէր, գրիչ Մխիթարութեան վշտաց, յորմէ ոչ սակաւ օգտեցաւ Կիկերոն. — Խրիւսիպպոս ստոյիկեան, աշակերտ Կլէանթեայ եւ հակառակորդ Ե-



159. Շիրիմ Արատոսի.

պիկուրոսի, ասի գրեալ գիրս կամ ճառս աւելի քան 300, յորս գտանէին եւ հակասութիւնք եւ անհեթեթ դրութիւնք. երեքին եւս կային յԳ. դարու նախ քան զԹուական Փրկչին: Ի Սոլեայ էին եւ երկոքին Փիլեմոն կատակերգուք, հայր եւ որդի, առաջինն՝ ասի 'ի զառամեալ հասակի՝ սաստկապէս ծիծաղելով մեռեալ: Անուանի քան զսոսա եղեւ Արատոս, 'ի նմին Գ. դարու, հռչակեալ յոյժ վասն քերդուածոյն Աստղաբաշխութեան կամ Նշանաց երկնից, զոր Կիկերոն եւ Գերմանիկոս եւ այլք ոմանք դրուատելով՝ յեղին 'ի լատին լեզու եւ 'ի չափս. սորա գե-

1 Est et *molubdena* . . . vena argenti plumbique communis . . . Laudatissima quæ in Zephyrio fiat. — Plin. *Historia Natur.* XXXIV. 53.

րեզման համարի լինել 'ի բլրակի յարեւելեան հիւսիսային կողմն քաղաքին: — Ի ժամանակի Միհրդատեան պատերազմաց՝ արշաւկունի աշխարհակալ մեր Տիգրան՝ Նիզակակից աներոյն և վրէժխնդիր Հռովմայեցւոց՝ 'ի հուր և 'ի սուր դատելով և զկողմանս զայսոսիկ Կիլիկիոյ՝ յաւեր դարձոյց և զՍոլի. այլ յետ ոչ բազում ամաց եկեալ Պոմպէի ընդդէմ Նորա և Պոնտացւոյն, գրաւեաց և եա վերականգնել զքաղաքն, յիւր անուն կոչելով Պոմպէուպօլիս, Πομπηϊούπολις, Pompejopolis. ամրացոյց պարըսպօք և մարտկոցօք, և պէսպէս շինուածովք վայելչացուցեալ՝ շինեաց և գեղեցիկ նաւահանգիստ ձուաձև, իբրև 460 Ք. ընդ երկայնն, 220 ընդ լայն, առաւել կամ պակաս, և աւելի քան երկու Ք. բարձր և 15 Ք. թանձր շրջապատ ամբարտակօք, յորում՝ յարեւելեան կողմանն՝ փորեալ է ուրեք գուբ ջրոյ. և իբրև 90 Ք. հեռի 'ի գլխոյ կիսաբոլորին՝ 'ի միջի ծովուն՝ ամբարձեալ կայ խարիսխ կամ պատուանդան՝ ոչ գիտեմ որոյ արդեօք անդրւոյ, դի՞ց յաղթութեան եթէ Պոմպէի: Բնակեցոյց սա 'ի քաղաքին զոմանս 'ի նուաճելոց յելուզակացն և յայլոց, որով յառաջին շնորհսն բարձրացաւ տեղին, եղեալ յետոյ և եպիսկոպոսանիստ ընդ Սելևկիոյ նահանգաւ: Ոչ սակաւ դրամք գտանին քաղաքիս, ինքնիշխանականք և կայսերականք, յորս յաճախագոյն են տիպք դից Պալլասայ և Անահտայ, այլ և Բահաղու, որ յայտ առնէ զսեմական



160. Յատակաձեւ Պոմպէուպօլսոյ.

ծագումն, եւ՝ արեգական, ողկուզոյ խաղողոյ, Պոմպէի վերականգնողին, և այլն, որպիսիս է նշմարել և 'ի պատ-




161. Դրամ Պոմպէուպօլսոյ.

կերեալքս աստանօր, յորս նշանաւոր է նորագիւտ մեծ պղնձեայն (Թիւ 161), կրելով զանուն քաղաքին 'ի մահիկ լուսնի[1]: Մեծ սասանութիւն երկրի՝ յամի 525՝ խպառ ամայացոյց զքաղաքն, կամ ոչ եւս վերադարձոյց յառաջին վայելչութիւնն, որոյ նշանք քաջ իսկ ակներև կան մինչև ցօրս այս. և գլխաւոր այնոցիկ է երկկարգեան երկայն շար՝ իբր 15 Ք. զուգահեռական՝ երկերիւր սեանց, 'ի կեդրոնէ շրջանակի նաւահանգստին ձգեալ 'ի քաղաքամէջն՝ ընդ Հս. Եւ. ընդ երկայնութիւն պողոտայի 450 չափուց, մինչև ցաւագ դուռն քաղաքին, յորմէ և անդր ձգի պողոտայ սալայատակ մինչև 'ի կամուրջ մի կործանեալ. աւելի քան քառասուն 'ի սեանցն տակաւին կանգուն կան՝ յարեւելեան կարգին, արեւմտեայքն գրեաթէ 'ի սպառ տապաստ դնին. 5 ½ Ք. բարձրութեան է սեանցն, և իբր 0, 95 տրամագիծն. մէն 'ի չորից հաստ-

[1] Դրամս այս պահի 'ի կայսերական Թանգարանին Վիեննայ, հրատարակեալ 'ի Քէննէրայ (Fried. Kenner) և 'ի Պուդքավաքեայ:

րոց վիմաց զուգեալ. կէսք 'ի նոցանէ կործանեալ անկեալ են, այլք խառն, և խոյակքն աչքաչէս քանդակս ունին՝ տերևաց, պատկերաց, և յաղթութեան կերպարանաց, և ուրեք ուրեք անուանս Հռովմէական կայսերաց. թուի երբեմն և կամարակապ լինել սոցանց, զէթ այսպիսի ինչ կայր 'ի Հայաստանեայն ծայր արևմտեան սիւնաշարին [1]. — Յարևելակողմն քաղաքին 'ի բլուր մի յեցեալ է թատրոն կամ Ամփիթատր, որոյ հիմունք միայն այլխառն վիմօք՝ և տակաւ ինչ յաստիճանացն երևին տող, և մօտեալ քան-դակապատկեր Աստղկան։ — Ողջոյն մեծն պարիսպքն շրջապատք զորոր քաղաքաւն, քառակուսի աշտարակօք, առելի քան զերեսուն. իսկ արտաքոյ քաղաքին ոչ սակաւ շիրիմք և գերեզմանք և այլոց ինչ շինուածոց մնացորդք, յորոց գուշակի բազմամարդ և կարի շէն լինել Պոմպէ-ուպոլսոյ, թէ ոչ շատ ընդարձակ։ Մի 'ի շիրմացն կրա-քարեայ՝ շախաւոր արձանուտ՝ հանեալ 'ի տեղւոջէն բերաւ 'ի Տարսոն, և 'ի վերնագիր նորին բառէն գուշակի քրիստոնէի ուրումն Դիոնիսիոսի եօթանասնամենի և կը-նոջն՝ Ամմիոյ Ամմիանեան † 44 ամաց։ Նշմարին 'ի քա-ղաքամիջին տեղիք բաղանեաց, ջրամբարաց, ագուգայից և եկեղեցեաց. մի 'ի յետնոցս 'ի միջավայր քաղաքին է քառակուսի երկայն։ — Ի տափարակի որ ընդ մէջ ծով-ափանցն և լեռնոտանց՝ նորանկին հօտք անդէոց, զի անդրանիկք են մերձակայ աւանակքն ցՄէզլէւոյ. 'ի մէջս-ցին կան հաղարչուպք՝ որպէս թուի ձեռագործք, և 'ի վերայ լեռնապարացն՝ բերդորայք։ — Առ մերայինս՝ մերձ Պոմպէուպոլիս ասմնաւոր ծնեալ՝ Բամբոլոն, 'ի վեր-ջին ժամանակս պայազատութեանն, յամի 1318, յա-րուն Խարամանք արշաւեալ 'ի Տարսոն՝ և դարձեալ զա-գարեալ էին «Ի Բամբոլոնի կանգառոյն. նա Գունդն » Կոսփինոս Պարոն Օշին՝ երեքհարիւր մարդով հասաւ » նոցա, և կոտորեաց զնոսա՝ Աստուծով. և դարձաւ ու-



162. Կամարափողոց Պոմպէուպոլսոյ.

» րախութեամբ »։ Կանգառայս՝ կամուրջն է, որ 'ի սիւնաշարէն մեծ է։ Վարուն թուի նաւահանգիստ Պոմ-պէուպոլսի յայնմ ժամանակի. զի յիտալական ծովեզե-րեայ տեղագրուցի միում միջին դարուց՝ Porto Bombili-co գրի, թէ և անդր քան զԼամաս։ — Ի սահմանս Պոմ-պէուպոլսի, բառ Եղիշէին Պլինիոսի, էին կայքաճուր ագա-րակք. զնոյն վկայեաց և գիւղայնո մի կողմանցն 'ի սկիզբն դարուս՝ առ Պոֆորդ, և սակս լինել վեց ժամուք 'ի Հռ. Եղ. Մերսինայ. զոր և 'ի ժամանակի եգիպտա-կան մարտից սուրգեալ Իպրահիմայ՝ 'ի զորն էած։ Տե-ղի կայրագրերցն Պիկարդի? (Bikhardy) գրի առ Պո-ֆորդի։ — Մերձ 'ի ծովեզրն կայ աղբիւր քաղցրահամ։ — Սահման նաւահանգստին և ծովեզրն Պոմպէուպոլ-սոյ՝ Հախուան կոչի 'ի տեղացեաց, որք և ասանցեն ա-նուն լինել Հրէի շինողի տեղւոյն։ — Ի սահմանս Պոմ-պէուպոլսի գտեալ հետազննին բուսաբանին նոր տեսակ ճնճղկի՝ կոչեալ յանուն տեղւոյն, Silene Pompejopo-litana, և զատ յայլոց բուսոց նշանակեաց և զՏերեփուկ խաժագոյն (Centaurea glauca), և *Աղուեսագի կորա-կեղև (Orobanche camptolobis)։

[1] Ուղևորք նախապարհորդիքս գրեաթէ միաձայնաբար (Պո-ֆորդ, Պոլլըր, Լանկլուա, Չիհաչէֆ, Բեգերման, Տեքիս), զհան-դուն ծագեալ սիւնս թուեն անթիւահարսար, 40, 44, 42, 45, 45. որ ոչինչ առաւելութիւն կամ նուազութիւն բերէ հնութեանցս, այլ նշանակեցի 'ի ցոյց փոփոխմանց և ախմաւոր և զգուշաւոր գրե-լոյ, և այլ և այլ տեսութեան խուզարկուաց։

## Բ. ԾՈՎԵԶԵՐՔ ՏԱՐՍՈՆԵԱՆ ԾՈՑՈՅ

137. Զայսր մասին ծովեզերաց Հայոց՝ որ են յատուկ առհասարակ Տարսոնի՝ արդէն տեղագրեալ եմք զարեւմտակողմն, մինչեւ ՚ի գետաբերանս Կիւդնոսի եւ Սերսինոյ. իսկ որ անտի եւ անդր արեւելեան մնացեալ է գետաբերանոց Սարոսի եւ Պիւռամոսի՝ մինչեւ ՚ի հրուանդանն Կարաղաշ, գրեաթէ չունի ինչ չէն տեղի. թէ եւ էր ակն ունել մեծաց ինչ եւ նշանաւորաց՝ վասն մերձաւորութեանն ՚ի մայրաքաղաք աշխարհին Կիլիկեցւոց, եւ յաքն բազմագրաւ Այէյեան գաւառի. եւ այսր պատճառ գըլխաւոր՝ յեղափոխութիւն երեւոյթ երկրին եւ ընթացից գետոցն. որոց՝ ըստ յառաջագոյն գրելոյս, փոխեալ զակն եւ զհուն՝ ընդարձակեալ է զցամաքն, ծածկելով զշէնսն՝



163. Սիւնք Պոմպէուպոլսի.

որ թէ եղեալ էին ՚ի ծովեզերս անդ։ Զիսն եւ նոր չէնք. քանզի ծովափունքն աղտաղուտք են եւ անհաւատք. եւ որ երբեմն հուպ ՚ի Սարոս բերանանայր Պիւռամոս, կամ թէ ընդ նմին միախառն հոսէր ՚ի ծով՝ ոչ հեռի ՚ի բերանոյ Կիւդնոսի, արդ բազում փարսախաւ մեկուսացեալ ընդ արեւելս՝ թափի ՚ի Ծոցն Հայոց։ Ցայս սակս եւ զմաւարիմացք լինին եւ անստոյգք առ ՚ի նախնեաց յիշեցելոց ինչ տեղեաց գիրք. յորոց մի՝ քաղաքն Անտիոք Պիւռամեան, Antiochia ad Pyramum, կամ Անտիոք Ծովեզերեայ, Antiochia maritima, երբեմն ՚ի միջոցի բերանոյն Սարոսի եւ Մեգարսոսի, ուր համարի երբեմն բերանանալ Պիւռամոսի. բայց զի զտանելն դրամք յա-

*նուն Անտիոքայ Սարոսեան* (Αντιοχέων τῶν προς τωι Σαρωι), *մերձագոյն ևս 'ի Սարոս գրելի է զտեղիդ. այլ որ զիարդ և իցէ՝ չիք ինչ ծանօթութիւն, որպէս և ոչ յայտնի մնացուած նորին։ Պատմիչ գործոց յետին Լեւոնի՝ ասէ վասն նորա, 'ի Կոռիկոսէ նաւեալ 'ի գետաբերան Ադանայի (Սարոսի) իբրև երեսուն փարսախ, 'ի տեղին անուանեալ* Գոնդասլաս, *մերձ 'ի Ս.* Կիպրիանոս, *զոր համարիմ նաւահանգիստ մի լինել*[1]։ *Անդր եկին յետոյ և մայր նորա և կին, և նստեալ յերիվարս՝ գնալով երիս տիւս և երիս գիշերս՝ հասին անվտանգ յԱնաւարզա։*

*Առ սահմանօքս համարի և երկրորդն* Ձեփիլուռիոն, *լեզուակ մի աւազուտ յառաջեալ 'ի ծով, և ամենայն ծովեզրն ցԳարադաշ՝ աւազուտ է և ճախնային, և հեռագոյն՝ աւազաբլուրք են յամայի դաշտին. են և լճակք, յորոց մին իբր 12 մղոն երկայն ջրանցիւք հաղորդէր ընդ ծովու՝ 'ի ժամանակի յորում ետես Պոֆորդ (1812), և կղզեակ մի 'ի նմին հանդերձ աւերակօք. երեք ոտնաչափ խոր էր ջուրն աղի, և եռային 'ի նմա ձկունք և ջրասէր հաւք. և զի ոչ ընդ այլոյ լճի և ոչ ընդ գետոյ հաղորդութիւն ունէր, հարկ է թէ ծովն յառաջէր ընդ անցս 'ի ցամաքն կոյս. բայց յառաջին ժամանակս չէ անհաւան թէ ջրանցքդ հուն եղեալ իցեն Պիւռամոսի։ Աստանօր գտաւ թիթեռնն* Panorpa Coa *դեղնաթև և սևախայտ զուգակ փետրաձևօք (պատկերեալն 'ի բնագրութեանս յէջ* 33)։ Ի *կղզեկին կամ յեզերս լճին է աւերակ եկեղեցւոյ, զոր աւանդեն կոչիլ յանուն Ս. Անդրէի*[2], *ուր ոմն 'ի կուսակալաց Ադանայ կառուցեալ էր զբօսարան՝ յորս ձկանց լճակին։*

*Հրուանդանն Գարադաշ-պուռնու՝ տափարակ սպիտակ ժայռ է կրաքարուտ կաւախառն, իբր 125' բարձր, չեչտակի վերամբարձեալ 'ի մակաւասար ծովեզերէն, որ 'ի Լամոսէ մինչև ցայսր՝ 'ի սպառ հարթածաւալ երևի. բլրակք մանունք յեռեալք 'ի հրուանդանն՝ ձգին 'ի ցամաք կոյս, պարածածկեալ ցածուն կաղնեօք, որք ևս քան զևս աճեն և բարձրանան 'ի կողմն Ադանայ։ Են ոչ սակաւ աւերակք 'ի հրուանդանին. 'ի հիւսիսակողմն՝ եկեղեցի մի սաքաշէն չորիւք գեղեցիկ սեամբք, նկարէն որմովք, ըստ աւանդութեան՝ Ս. Նիկողայոս կոչեցեալ, և ջրհոր խորին առ ընթեր, և կափարիչք դամբանաց. ոչ հեռի՝ մնացորդք բաղանեաց. 'ի հարաւակողմն՝ քառակուսի մեծ շինուած բերդանման, կամարակապ. 'ի կամարի դրանն որ 'ի հիւսիսոյ կողմանէ՝ քանդակ վահանի կրկին ընդդիմահայեաց առիւծովք, զոր Պոֆորդ համարեցաւ Սպանիացւոց ? նշան, այլ Լանկլուա ոչ երկբայի հայկական լինել. հնագոյն ևս ձեռակերտից մնացուածք գոն յարտևան քարաժեռին։ Ունի և լապտեր լուսատու 40 Չ. բարձր յերեսաց ծովու։ — Ըստ նախնեաց նկարագրութեան՝ հրուանդանս այս ծովակեր, այսինքն կրծեալ և քերեալ 'ի ծովէ՝* Մեգարսոս *է*, Μέγαρσος, Megarsus, *կամ Մագարսա*, Μάγαρσα, *առ որով անցանելով յայնժամ Պիւռամիս՝ թափէր 'ի ծով. էր անդ մեհեան մի Աթենասայ յանուն քաղաքին կոչեցելոյ (Մեգարսեան Աթենաս), որում զոհ մատոյց Աղեքսանդր։ Սակաւագիւտ են յոյժ դրամք Մեգարսոսի, կերպարանաւ աշտարակախոյր կնոջ և գետոյ 'ի լիւղ, և գրուածով՝ առ Պիւռամոսի լինել, որպէս թէ գոյր և այլուր համանուն քաղաք.* ΜΕΓΑΡΣΩΝ ΤΩΝ ΠΡΟΣ ΤΩ ΠΥΡΑΜΩ. — *Երկու կղզեակք են յարևելից հրուանդանին, նոյնպէս աւերակս ինչ ունելով, և արդ ապաստանարանք նաւորդաց, որպէս և իջևանատունն որ 'ի ցամաքի՝ խան կոչմամբ, ուր Անսարի Ասորւոց հաստատեալ է գեօղ իբր* 30 *տանց՝ յանուն Գարադաշի։ Առ մեօք յերկրորդ քառորդի դարուս՝ Ճին Եուսուֆ ոմն յազգէ նոցին՝ բռնացեալ ունէր զկողմանս։*



164. *Գարադաշ խան.*

*Սակաւ մղոնօք 'ի հիւսիսոյ Մեգարսոսի խնդրելի են աւերակք* Մալլոս *քաղաքի կամ բերդի՝ դաստակերտի արգիւացի դիւցազանցն Մոպսոսի և Ամփիլոքեայ որդւոյ Ամփիարաւսայ, 'ի բարձրաւանդակ վայրի, որ կայր յարևելից կուսէ Պիւռամոսի՝ 'ի հնումն. 'ի վերայ նորին կամուրջ արկեալ Աղեքսանդրի՝ 'ի Մեգարսոսէ գալով եմուտ 'ի քաղաքն. պատուեաց զոհիւք զբագին Ամփիլոքեայ, և ապահարկ արար զքաղաքն, որոյ նաւահանգիստ համարէր Մեգարսոս. հարկ է թէ և ինքն բարգաւաճ քաղաք էր շահաստանի, և գլուխ վիճակի կամ գաւառի յիւր անուն կոչեցելոյ* Մալլովտեան, Μαλλῶτις, *և դրամ ևս հատանէր առանձինն, որպիսի է այս ընդ իշխանութեամբ աքեմենեան Պարսից հատեալ. իսկ 'ի*




165. *Պարսկական դրամ Մալլոսի.*

*կայսերականս՝ կերպարանի կին նստեալ 'ի քարաժայռի առ գետով,* ΜΑΛΛΩΤΩΝ *գրութեամբ։ Այս անուն յիշի և 'ի գիրս Հին կտակարանաց,* 170 *ամաւ նախ քան ըզթուական Փրկչին. « Դէպ եղև Տարս(ոն)ացւոց և Մալլովսացւոց՝ ժամանակն 'ի գրգիռ վայրի դիպել. վասն զի « տուեալ էր զնոսա յուտեստ Անտիոքիդեայ հարճի թագաւորին*[3] ». *այսինքն, բնակիչք երկոցուն քաղաքացն սրտմտեալ՝ վասն կարգելոյ թագաւորին Ասորւոց՝ զվի-*

1 Vers la dite rivière d' Adanés ... sur la dite rive en une plaice qui se nomme *Gondaslas*, près de *Saint Ciprien*. — J. Dardel, 72.

2 Լանկլուա, Ճանապարհորդութիւն, 422-425։

3 Գիրք Երկրորդ Մակաբայեցւոց, Դ. 30։

ճակ երկրի իւրեանց 'ի կալուած կամ 'ի առհիկ հարճի միոյ իւրոյ, ապստամբեցին 'ի նմանէ, այլ բռնութեամբ նուաճեցան անդրէն։ Ցիչի և 'ի միջին դարս նովին ա- նուամբ Mallo կամ Malo։ Ըստ գիտնոց ոմանց՝ Մալլոս իսկ է Պիւռամեանն Անտիոքիա, առ ժամանակօք Սե- լևկիացւոց այսպէս կոչեցեալ. զի գտաւ ևս 'ի նմին ան-



166. Մեգարսոս = Գարադաշ, եւ շրջակայք. 1/15,000.

դրի Երմոկրատեայ ուրումն, որոյ արձանագիր ասէ. «Ժողովուրդ Անտիոքայ առ Երմոկրատ որդի Դիմէու, » հասարակաց բարերարի ». և այլ արձան մի Ամփիլո- քեայ յաղթողի յոլիմպիական մրցմունս, նոյնպէս յանուն Անտիոքացւոց. Ὁ δῆμος ὁ Ἀντιοκέων, կամ Ἀντιοκέων ὁ δῆμος. Արաբացի աշխարհագիրն Էտրիսի զսա Թուի կո- չել Էլ-Մուլավվէ, զի ասէ, յետ Մսիսայ ընդ այս ան- ցեալ Ջահան գետ՝ Թափի 'ի ծով։ Փափագելի էր գիտել թէ զիարդ կոչէր 'ի Հայոց՝ յիշխանութեան երկրին. զի ոչ հաւանիմ ըստ Լանկլուայ՝ թէ սա իցէ Գումբեթփոր բերդ, զորմէ ճառեցաք յառաջն ուրեմն (յէջ 143)։

Աւանդի յոմանց աստանօր քարոզեալ զաւետարանն՝

Նիկանովրի՝ միոյ յեօթանց Սարկաւագաց՝ ընկերաց Սրբոյ Նախավկային: — Ի Հս. Եւ. Մալլոսի կայ կամուրջ մի հին՝ մնացեալ արդ 'ի ցամաքի: — Ընդ մէջ հրուանդանին Գարադաշի և աւերակաց Մալլոսի՝ 'ի բլրի ուրեմն 'ի միջի այլոց աւերակաց՝ են ոչ սակաւ գերեզմանք Թուրքաց, սիւնաքարձ ծածկութիւ կամ յարկօք, պատուեալք որպէս դիրս նահատակաց. և թուին Եգիպտացւոց կոտորելոց, թերևս յամի 1320, յորում ըստ շարայարողին Սմբատայ, «Կոտորեցին զօրքն Հայոց զզօրսն » Մսրայ՝ առաջև Բարիքարկու, (քննելի անուն և տե» ղի), և 'ի սահմանս Այասու, և խոցեալ յանօրինաց » մեծ իշխանն տէր Կանչոյն՝ Պարոն Կիւաւդին՝ և մե» ռաւ»: Ցիչին և յառաջ և յետոյ այսպիսի կոտորածք 'ի սահմանս Այասու: — Ի հիւսիսոյ Մալլոսի չորք կամ հինգ ժամուք հեռի՝ են հանգրուանք Թուրքմանաց և գեօղ գլխաւոր՝ Աղտաւն անուն: — Ի սահմանս նոցին, և առ Թրքիշէն գիւղիւ զոր յիշեցաք յառաջն (յէջ 253), համարին ոմանք եղեալ զՍելեւկիա Պիւռամեան քաղաք, գուշակելով 'ի վերտառութենէ դրամոց, ΣΕΛΕΥΚΕΩΝ ΤΩΝ ΠΡΟΣ ΤΩ ΠΥΡΑΜΩΙ.

Հին ապարիզաչափ ծովեզերացս՝ յայսմ բաժնի նըշանակէ 120 ապարիզօք (վեց ժամու) յելից գետաբերանոյն Սարոսի՝ զտեղին անուանեալ Կեփալ, Cephale, որ թարգմանի Գլուխ, կամ Յոնիա, Ἰονια, և լաւ ևս ըստ ոմանց՝ Պանիա, Πανια, զի յայս անուն նաւակայք յիշին յայլմէ նորագոյն հեղինակէ: Գլուխ կոչումն նշանակէ զբերան Պիւռամոսի՝ որ յայնժամ թափէր աստ, զուգեալ կամ մերձեալ 'ի Սարոս, վասն որոյ այլ հեղինակ կոչէ Գլուխս Սարոսի, Capita Sari: Աստի յԱնտիոքիա Պիւռամեան՝ եօթանասուն ապարէզք էին. յԱնտիոքիայ ցՄալլոս՝ 150 ապարէզ. 'ի Մալլոսէ՝ հարիւր ապարէզ ց'Երկեակ կղզիս (Didyme), որք թուին կղզեակքն վերոյիշեալք յարևելից Գարադաշի. զորս յիշէ և Սանուտոյ, և Մալլոսի պատշաճեցուցանէ [1]: — Ի կղզեաց աստի բացագոյն երեսուն ապարիզաւ՝ էր հրուանդան մի Ցանուարիա անուն, ըստ ոմանց նոյն ընդ Մեգարսոսի. առ նմին նշանակի և Սեռեպօլիս քաղաքաւան, Σεῤῥέπολις, ըստ այլոց Սերետիլիս, Seretilis. աստի և անդր սկսանին սահմանք Այասայ կամ բերան Ծոցոյն Հայոց, յոր մտանիմք:

1 ՍԱՆՈՒՏՈՅ. — Malo portum habet, qui coram se duas habet parvuneulas Insulas. — SANUTO, *Secreta Fidelium*, II. IV. 26.



167. Դուռն յԱկէի, մերձ 'ի Լամոս. (տես յէջ 346).

# Գ· ԱՐԵՒԵԼԵԱՆ ԾՈՎԱՓՈՒՆՔ

## ԿԱՄ

## ՈԼՈՐՏՔ ՀԱՅՈՑ ԾՈՑՈՑ

138. Վերջինս այս բաժին Ծովային Կիլիկիոյ, որ և վերջին համօրէն հայկական աշխարհին Սիսուանայ, բովանդակէ զարևելեան հիւսիսային խորշ և զուռն Միջերկրական մեծի ծովուն. ոլորտք նորին յարևմտից 'ի հիւսիսոյ և յարևելից՝ են անձուկ ափունք ցամաքի պարըսպեալք 'ի լերանց. յառաջին կողմանէն՝ լերինք Մասայ և որք 'ի նոյն կցորդեալք երկուստեք՝ ոչ անանջատք և միայրք. 'ի հիւսիսոյ՝ անստոյգ են գնացք լերանցն, և սահմանն ընդարձակագոյն՝ ընդ մէջ երկրի ձգեալ ընդ կողմն Թլայ. յարևելից՝ մի ըստ միոջէ կանգնին Սեաւ լերինք, Ամանոսեան լերինք և Պիերեան լերինք, զորս մարթ է միահամուռ յանուն Ամանոսի կոչել: Մերձաւոր լերինք ոլորտից ծովածոցոյն՝ յոլովագոյն մասամբ կրաքարուտ են, պէսպէս զանգուածով, այլայլեալք հրաբղխային ներգործութեամբք, և ձևով յոյժ վայելուչք վկային: Իսկ 'ի հարաւոյ՝ ծովն ինքն սահմանակալ կայ, մուտս բացեալ իբրև ընդ մէջ երկուց սեմոց անփակ դրան՝ ընդ մէջ նախածանօթ Մեգարսոսեան հրուանդանին և ընդ Հռոսիկեան սարի, Rhosicus scopulus, որ յԱրաբացւոց կոչեցաւ Խոզագլուխ, Ռաս-Խանձիր. որք և զուգահեռական դիրս ունին, իբրև 25 մղոնաւ տարակացք. գրեաթէ նոյնչափ է և լայնութիւն Ծոցոյն մինչև 'ի ծագն՝ յարևելեան ափունս. զի 'ի հարաւոյ արևմտից ընդ արևելս հիւսիսոյ ձգի քսակաձև իմն խորշն այն՝ իբրև 45 մղոն ընդ երկայն: Արևելեան սահմանահատ լերինքն զատուցանեն զԿիլիկիա և զամենայն աշխարհ Փոքուն Ասիոյ՝ յաշխարհացն Ասորւոց: — Ըստ նշանակեալ չափուցդ երկայնութեանն և լայնութեան՝ ահա ոչ կարի ընդարձակ ինչ է ծոցս այս, որպիսիս ունի Միջերկրականն 'ի միջոցս այլևայլ կողմանց երից մեծ հաստուածոց հին երկրագնտի. այլ թերևս քան զընաւս անքոյթ՝ շրջապարիսպ հողմարգել լերամբքն, և գեղեցիկ ևս քան զընաւս՝ կապուտագոյն ալեօք, գոգաւոր ձևովն, և յաւէտ դարական յիշատակօք վաղեմի ժամանակաց և ազգաց, և ևս առաւել՝ բաղդավճիռ նոցին պատահարօք. քանզի բազում անգամ յանձկութեան ափանցս այսոցիկ՝ կատարեցան և կնքեցան նախնիք և օրհասք ազանց, և հուսկ մարթ է ասել զՀայկազանցս, որպէս տեսցի յառաջիկայդ:

Յետ հազարամեայ անցից և փոփոխութեանց՝ զարդիս գլխաւոր շինատեղի Արևելեան ծովափանցս՝ 'ի միջավայրս արևելեան ափանցն՝ է Աղեքսանդրեակ քաղաքիկ, յորոյ անուն հասարակօրէն կոչի արդ և ծոցն, Golfo di Alessandretta. այլ զառաջինն կոչէր Իսսեան ծոց, Ἰσσικὸς κόλπος, յանուն Իսսոս քաղաքի՝ որ էր յարևելից հիւսիսոյ փարսախօք ինչ հեռի յափանց ծովուն. պատմահայրն Երոդոտոս կոչէր Միւրիանդրեան ծոց, յանուն բարգաւաճ քաղաքի միոյ մերձ 'ի Հռոսոս. իսկ ըստ մեզ՝ Ծոց Հայոց. զի առ հարստութեամբ Ռուբինեանց սովորութիւն եղև, (որպէս և պատշաճն պահանջէր), արևմտեան ազգաց և վաճառականաց յաճախելոց անդր՝ այսպէս կոչել զայն. նա և վաղ իսկ ուրեմն՝ գրեաթէ հազար ամաւ յառաջ՝ Ամմիանոս Մարկելոս պատմիչ թուի նոյնպէս կոչել զայս՝ Ծոց Հայոց, Armenicus Sinus. ուրեմն և անդստին 'ի Դ դարէ՝ ցայսվայր սփռեալ էին Հայկազունք. և ոչ միայն Ծոցն՝ այլ և համօրէն միջոց ծովեզերաց՝ ուր իշխանութիւն Հայոց Ռուբինեանց տարածէր՝ կոչեցաւ 'ի միջին դարս՝ Հայոց Ծով, Mare Armeniæ, և 'ի Փռանկաց Mer d'Herminie, կամ Ծովեզերք Հայոց, Riperia Armeniæ լատինարէն, և մինչև ցվերջ ԺԵ դարու իսկ՝ 'ի դիւանս և առ պատմիչս Վենետաց, Le Marine dell' Armenia. վասն որոյ և մեզ գրեաթէ հարկ իսկ էր այսպէս՝ Հայոց Ծոց անուանել զգոգս այս Մեծի ծովուն, զորոյ ոլորտս կայ մեզ տեղագրել: Բայց որպէս 'ի հնումն յանուն բարգաւաճ քաղաքին Իսսոսի և 'ի նորումս՝ Աղեքսանդրեդդայ, 'ի միջին ժամանակս անդ՝ յանուն մերոյս Այասայ չահաստանի՝ կոչէր յաճախ Ծոց Այասայ, Golfo di Layazzo, և յեղմամբ Golfo delle Giazze, և այս ոչ միայն յԺԳ և 'ի ԺԴ դարս՝ յորս բարգաւաճէր քաղաքն այն հարուստ հանգիստ նաւաց, այլ և անազան յոյժ՝ մինչև յամս 1621-3՝ գտանեմ նոյնպէս գրեալ յիտալացւոց ոմանց ուղևորաց:

Գրեաթէ 'ի միջավայրս արևմտեան ափանց ծովածոցիս՝ են արդ մուտք կամ թափումն Ջահանայ, որ երբեմն աւելի քան քսան մղոնաւ ընդ արևմուտս էր, անդր քան զՄեգարսոսեան հրուանդան, և երբեմն անդրագոյն ևս. և մինչ տակաւին արտաքոյ քան զԾոցս էին մուտքն՝ երկու հազար և աւելի ամօք յառաջ՝ գուշակութիւն իմն աւէին լեալ պատգամաց[1], եթէ «Եկեսցէ ժա-

Le Pyrame à la côte ajoutant d'âge en âge
De Chypre quelque jour atteindra le rivage.

[1] Փռանկ Թարգմանն Ստրաբոնի Կոսըլէն (Gosselin) այսպէս փոխեալ է զհռչակեալ պատգամս այս՝ յիւր լեզու և 'ի չափս.

« մանակ՝ զի լայնախաղաց յորձանք Պիւռամու՝ յառաջեալ հասցեն մինչև ցսրբազան ափունս Կիպրոսի ». քանզի հանապազ վարէր զհող և զխիճ 'ի լերանց Կապադովկիոյ և Կիլիկիոյ. իսկ զարդիս խոտորեալ այսր յարևելս՝ նոյնպէս աւազակոյտ մեծ ամբարձեալ և ընդլայնեալ է զծովափունսն, ծածկելով՝ ըստ ոմանց՝ զաւերակս Սեռեպօլիս քաղաքաւանի, զոր համարին յարևելից հրուանդանին լինել. իբրև տասն մղոնաւ չափ տարածանի աւազուտն ընդ Հր. Մ. գետաբերանոյն, որ սուղ ինչ պակաս 500՛ լայն է, այլ ծանծաղ և ոչ որպէս երբեմն նաւարկելի. նաև 'ի սկիզբն ԺԲ դարու մինչև 'ի Մամեստիա՝ ասի նաւաց գալ ընդ Ջահան. և դիտելով զձև ծովափանցն՝ գուշակի վեց մղոնաւ չափ յառաջեալ աւազոյ կուտակին քան զսկզբնական ծովեզրն։ Առ գետաբերանովն՝ երամանան հոյլք ջրասէր հաւուց, և 'ի չամբսն կաղաղանան կինձք։ Կարծէ Ստրաբոն թէ և Կարմալոս գետ՝ զայս օրինակ վարելով հող և խիճ՝ քանդեալ էր զծովափունս առ Մալլոսիւ. բայց զի անմիաբան է նա յասացուածս իւր, և այլ հեռագոյն ուրեք նշանակէ զնոյն կամ զնոյնանուն գետ, ընդ երկրայութեամբ թողեալ է Մութիւ խնդիրն։ Զկան և այլ նշանաւոր ինչ ջուրք թափեալք յահեկէ Ջահանայ, այն է յարևելից. այլ վըտակ մի յանկեան ծովածոցոյն, թէ և այս կողմն ցամաքի ընդարձակագոյն է քան զայլ ոլորտսն. իսկ յարևելից կուսէ՝ յԱմանոսեան լերանց իջանեն գետակքն Տէղի-չայ, որ է Պինարոս նախնեաց, և Մէրքէզ՝ որ է Կարսոս։ — Գլուխ կամ ներքսագոյն գոգ ծովածոցին 'ի Հս. Եւ. ուր վտակն այն թափի և ուր համարի եղեալ Իսսոս՝ գրեաթէ կայ կշիռ ընդ միջօրէականաւ Ամիսոսի (Սամսոն) որ յեզերն Պոնտոսի, և գիծ որ ընդ մէջ երկոցուն քաղաքացս՝ համարի կարճագոյն բովանդակ փոքուն Ասիոյ, կամ սեփական կիրճ (isthme) նորին։

Ոլորտք Ծոցոյս Հայոց յիշխանութեան մերոցս յերիս կամ 'ի չորս գաւառս թուին զատուցեալք. յորոց որոշակի յիշի Ա. Ճկեր՝ յարևելակողմն, բովանդակելով զՊայաս, յոր կցորդել 'ի դէպ վարկանիմ և զՍեաւ լերինս. արևմտակողմն պատշաճի կոչիլ՝ Բ. Եգիաս, յանուն չահաստանին Այասոյ. իսկ հարաւակողմն Ճկերոյ՝ որ է ստորին մասն արևելեան ոլորտից՝ մինչև 'ի սահմանս Անտիոքայ՝ կոչելի է, Գ. Արսուս կամ Հռոսոս, յանուն քաղաքին որ կայ 'ի Հս. իւրանուն հրուանդանին մեծի։ Ըստ Օսմանեան վիճակագրութեան յայլ և այլ գաւառս կուսակալութեանն Ատանայի բաշխեալ են մասունք երկրիս. արևմտակողմն և Այաս՝ ընիկ Ատանայ գաւառի պատշաճին, միջին մասն և Պայաս՝ Ազիր գաւառի, հարաւային արևելեանն՝ Պիլան գաւառի։ — Իսկ մեք ըստ նախակարգեալ ոճոյ մերոյ՝ սկսցուք յարևմտից ուր դադարեցաք զտեղագրութիւնս՝ առ Մալլոսիւ և Մեգարսոսիւ, և պատեալ բոլորեսցուք զհիւսիսաւ, յանդ հանել յարևելս Ծոցոյն Հայոց, մինչև 'ի սահմանս Ասորւոց։

## Ա. ԵԳԻԱՍ=ԱՅԱՍ.

139. Որպէս յարևմտակողմն Մեգարսոսի՝ այսպէս և յարևելակողմն՝ անշէն են ծովափունքն զաղփաղփունք, և երկուստեք գետաբերանոյ Ջահանայ ամայի աւազուտք ցմեծ սահման. սակաւ փարսախօք մերձ յԱյաս՝ սկսանի հաստատուն գետինն, որ և ներամտեալ անդր 'ի ծովն՝ ցամաքակղզեակ իմն գործէ, յորում գեօղն Եումուրթալըգ (Զուանոց). առ որով՝ 'ի ժամանակի գրութեանս՝ լուեալ Ցունի միոյ (Սփիրաքի անուն) առաջարկել Օսմանեան պետութեան յարդարել նաւահանգիստ. մանաւանդ զի յառաջ քան զամս ինչ յայտնեցան անդ հանքք ածխոյ, և պեղեալ մինչև 50 չափ 'ի խորութիւն՝ գտաւ առատ, այլ կուսակալն Ատանայ ոչ կամեցաւ տալ բրբել և հանել։ Ընդ մէջ Ջահանայ՝ յարևելից՝ իբր չորս ժամուք հեռի, և Այասայ 'ի Հս. Մ. երիւք ժամուք, կան աւերակք քաղաքի, զոր համարեցան ոմանք լինել Կաստաբալա, և առ նմին գեօղ մի Թուրքմանաց՝ Գաւուրկօյ (Գավուրքյոյ?) անուն, ըստ Լանկլուայ, կամ Գարդաւնլըգ ըստ Քիննայրի, որ եկն 'ի կողմանքս յամի 1813։ — Երիւք ևս ժամուք 'ի Հս. Մ. նորաշէն գեօղ մի է սևամորթից՝ իբր 50 տամբք՝ յանտառամիջի, որք պարապին յորս տզրկաց և 'ի վաճառ գղթորոյ։ Են և այլ գեօղք 'ի կողմանքս, այլ անծանօթք ինձ յանուանէ, որոց գլխաւոր համարելի է 'ի ծովեզերին Շամըրգ, յորոյ անուն կոչի և գոգ ծովուն յարևելից կուսէ, իբր փարսախաւ լայն։

Ի գեղջէ կամ յաւանէ աստի երիւք կամ չորիւք փարսախօք ընդ արևելս, և նոյնքան 'ի հարաւոյ կարծեցեալ աւերակաց Կաստաբալայ՝ 'ի լեզուաձև ծովամուխ ցամաքի կայ անշուք գեօղն Այաս-գալէսի, երբեմն




168. Դրամ Եգէասայ.

անուանի և հին քաղաք Եգէաս, յորմէ և շուրջ վիճակն ցայսօր՝ ըստ Օսմանեան վարչութեան՝ կոչի Այաս, այլ զուգամասն համարի Մսսայ վիճակի, ընդ որոց յիշի և Պրէնտի, զոր ոչ գիտեմ յորում կողման և որպիսի իցէ։

Ցայսմ սահմանի ծովափանց՝ առաւել քան յայլ ծովեզերս Կիլիկիոյ՝ ետես Պօֆորդ հոյլս ազգի ազգի հաւուց,

հաղամասքս, կարասս, ասպս, բաղս, ջրլրս, և վասն ձկանց հոծերս ղկնանաքքը ջուրցն, այլ և կրիայս մեծամեծս մինչև 75 կշիռ (75 հազարկրամ)։ Իսկ ցամաք երկիրն 'ի հիւսիսոյ կողմանէ 10՛ կամ 20՛ քայլեր յերեսաց ծովու՝ դաշտ է խոտաւէտ և ուրեք մշակեալ։ — Քաղաքն Եգէ կամ Եգէա, Αἰγαί, Αἰγαῖαι, Αἴγεαι, Aegae, հաւանօրէն շինեալ է 'ի Յունաց, այլ հիմնադիրն անծանօթ. ըստ յունական անուանն համարի վասն չատութեան այծից կամ նմանութեան ինչ նոցին և գրից երկրին այնպէս կոչեցեալ, զի զուգաձայն հայկականիս՝ Այծ՝ Αἴξ կոչի 'ի յոյնն, և 'ի յոգնականն՝ Αἰγαί։ Բայց այլք ստուգաբանեն՝ Այծից քաղաք. և ոմանք առեն կոչեցեալ յանուն Եգէայ Ամազոն կնոջ, կամ Եգէոսի որդւոյ Թեսէոսի։ Ոչ ընդ անուանի քաղաքս աշխարհին համարեալ էր, այլ և ոչ աննշան. զի թէպէտ և փոքր էր, այլ ունէր և չափաւոր նաւահանգիստ վարուն. յորոյ պաշտպանու-



169. Այաս.

թեան և յաջողութեան՝ նուիրեալ երևի բագին կամ անդրի յաւուրս տիրապետութեան Հռովմայեցւոց, որոյ և արձանագիր գտաւ 'ի գիրս ուղևորաց, «Դից Սեբաստու Կեսարու եւ Պոսիդոնի Ճաստատողի, եւ Աստղկան Նաւյաջողի».

ΘΕΩ ΣΕΒΑΣΤΩ ΚΑΙΣΑΡΙ ΚΑΙ
ΠΟΣΕΙΔΟΝΙ ΑΣΦΑΛΕΙΩ ΚΑΙ
ΑΦΡΟΔΙΤΗ ΕΥΠΛΙΟΛ.

Էր 'ի նմին և անուանի մեհեան մի Եսկուղապիոսի։ Լուկանոս քերթող յիշէ (Գ. 227) զնաւահանգիս Եգէայ, բացական կամ հեռաւորական կոչելով ըստ գրիցն,

Mallos, et extremæ resonant navalibus Aegae.

Յամի 53 փրկչական Թուականի՝ Կորբուլոն զօրավար Հռովմայեցւոց, որ բազում զօրս առաւ թեան սորա 'ի Հայս, և Կլաւդիոս կայսերական Ալոյսոյ, զօրամողովք եղեն 'ի քաղաքիս Եգէայ, առ 'ի վանել զՎլազէս թագաւոր Պարթևաց 'ի Հայաստան աշխարհէ։ Ի միջոցն Բ դարու 'ի պատիւ Ադրիանու կայսեր կոչեցաւ քաղաքս և Ադրիանա, Hadriana, որպէս և յանուանս Մակրինու և Աղեքսանդրու կայսերաց՝ Macrinopolis և Alexandropolis։ Յառաջ իսկ քան զսոսա առեալ էր զպատիւ ազատ քաղաքի, որպէս կոչէ Պլինիոս (Ե. ԻԸ), Oppidum Aegae liberum. Ի ժամանակի քրիստոնէութեան Եգէա թեմ կարգեցաւ արքեպիսկոպոսի Բ Կիլիկիոյ. առաջին յիշեալ եպիսկոպոս է Ս. Զենոբիոս՝ զուգանուանի քերբն Զենոբիաւ նահատակեալ անդ յամի 303 'ի Լիսիայ կողմնակալէ, և թաղեալք 'ի միասմ

տապանի[1]. 'ի նմին ամի և 'ի նմին դատաւորէ նահատակեցան և հռչակեալ Անարծաթ Բժիշկքն հարազատք՝ Ս. Կոզմաս և Դամիանոս. մի 'ի պատմչաց մերոց ԺԳ դարու՝ զտեղի նահատակութեան սոցին անուանէ «Խոցադեղի աղբիւր, յելս քաղաքին Այասու»։ Աստ նահատակեցան և երեքին եղբարքն՝ Անտիմոս, Լէոնտիոս և Եւպրեպիոս. միւս ևս երեք եղբարք՝ Կլաւդիոս, Աստերիոս և Նէոնն, և վկայուհիքն Դոմնինա և Թէոնիլլա։ Ցայտ առնեն յիշատակքս ոչ միայն զպայծառութիւն քրիստոնէութեան յԵգէացւոցս քաղաքի, այլ և զգլխաւորութիւն նորին, զի նստոց լինէր կուսակալի ընդարձակ նահանգաց. և չիք երկբայել նաև 'ի կայսերական անուանց քաղաքին՝ զի շնորհս գտեալ էր յաչս նոցին կայսերաց, և նախ յԱդրիանոսէ, յորոյ անունն կոչէր և տաճարն կամ ապարանք՝ ուր նստեալ Լիսիայ դատէր զնահատակսն։ Մինչև ցկէս Զ դարու յիշատակին յոյն եպիսկոպոսք Եգէայ, յայնմ հետէ լռեն, (մինչև 'ի կէս ԺԳ դարու յառնեն եպիսկոպոսք մեր Հայոց), միանգամայն և քաղաքական յիշատակք. յորս նշանաւոր է յետինն (ըստ մերս գիտութեան), աւանդեալ 'ի Թէոդորոսէ ումեմնէ՝ 'ի Ճանապարհագրութեան Սրբոց տեղեաց, յամի 538. եթէ, յԵգէա տարեոր տօնավաճառք լինէին զաւուրս քառասուն, ազատօրէն առանց սակի և բաժի. այլ թէ յետ աւուրցն քառասնից գտանէր ոք պարապեալ յառևտուր՝ ինչք նորա յարքունիս գրաւէին[2]։

Այաս լռելեայն իմն այլ մեծապանծ փառօք՝ յառնէ յեօթնդարեան լռութեանց և աւերանաց՝ 'ի նոր կեանս, արդարև ոչ երկարս, ըստ կարճելոյ բաղդի Ռուբինեան պայազատաց Հայոց, այլ այնքան լիուլի ոգւով՝ շարժմամբ և եռանդեամբ, մինչև ընդ յաւերժայիշատակ քաղաքաց երկրի դասիլ. և իբրև զդար մի ժամանակի հարստութեան մերայոցս՝ լինել ամենաբարգաւաճ տուրևառիկ վաճառականութեամբն և այլազան ազանց երթևեկիւ՝ սիրտ աշխարհի և տէրութեան նոցին, որպէս Սիս՝ գլուխ. այլ և քան զգլուխն պերճացեալ աշխարհածանօթ հռչակաւն, որպէս և քան զամենայն առաջին շահաստանս աշխարհին, և յաղթական մրցմամբ՝ առաւելեալ քան զօտար շահաստանս Ասորւոց և Եգիպտոսի. միանգամայն ասել, 'ի կիսոյ ԺԳ դարու՝ մինչև ընդ յետ բարձման իշխանութեանն Անտիոքայ (1268), և նուաճման Պտղոմայիսայ (Աքքեայ) յԵգիպտացւոց (1291), ցըկէս ԺԴին՝ եղեալ առաջին նաւահանգիստ և հրապարակ վաճառուց՝ հին արևելեան աշխարհաց՝ Պարսից, Հնդկաց և անգամ Ճենաց, և արևմտեան աշխարհաց՝ Իտալիոյ, Սպանիոյ, Փռանկաց, Գերմանաց և այլոց ոմանց։

Ի սկզբանէ հաստատութեան թագաւորութեան Հայոց՝ սկսան յաճախել արևմտեայքդ յերկիրս յայս. առ որս՝ առաջին պարգևագիրք Լևոնի կրեն զթուական առաջնոյ ամի ԺԳ դարու, մինչդեռ նաւահանգիստք նորին էին Տարսոն, Կոռիկոս և այլք, որք դուն ուրեք յիշին, զի չև ևս էր բացեալ անտուստ մեծ ճանապարհն վաճառականութեան արևելեան աշխարհաց, և հին շահաստանք ծովափանց Ասորւոց նախապատրաստ առ այն գտանէին։ Իսկ 'ի նուազել սոցա և յընկճել ընդ իշխանութեամբ այլազգեաց՝ հարկ լինէր այլ իմն անքոյթ ապաստանարան խնդրել կարևոր շահուն, որ զերծ կայցէ 'ի վտանգէ հինից, միանգամայն և մերձագոյն յաշխարհակոխ հին ճանապարհն վաճառականութեան Ասիոյ. և այսպիսի ցուցաւ տեղի Այաս, 'ի բնէ իսկ՝ այսինքն ըստ դրիցն՝ պատսպարեալ 'ի բռնութեանց հողմոց. վկայեն և այժմու քննիչք՝ զի չիք քան զԱյաս անքոյթ նաւահանգիստ 'ի կողմանս անդ ափանց Գարամանի և Ասորւոց, յորում երբեմն ձմերեաց մեծ ջոկատ մի անգղիական նաւատորմղի։ — Ո՞յր 'ի մերայոց հանճար պարադէտ և ձեռն աջողակ, և յորում ամի կազմեաց, երաց, եցոյց զԱյաս, հանդերձեալ՝ նաւակայիւք, ամբարտակօք, բերդիւք ծովու և ցամաքի, մթերանոցօք, բաժտամբ, և ամենայնիւ որ կարևորն է մեծի և առաջնոյ աշխարհամուտ նաւակայանից պետութեան միոյ՝ ասպնջականի յոգունց պետութեանց. — ցարդ չէ ցուցեալ պատմութեան զարժանաւորն այն բազում դրուատեաց, և զնոր նեցուկ պետութեան Հայոց՝ յոսկեղէն խարսխի. այլ հաւանիմ՝ թէ որ յետ Լևոնի ամենահայեաց և ամենահաճն էր 'ի Հայս՝ արքայահայրն Կոստանդին՝ հնարեաց և զայս. գէթ անժխտելի է, զի առ կենդանեաւ նորին՝ 'ի յետին արդիւնական ամսն՝ զառաջինն 'ի յայտ գայ Այաս, որպէս քաղաք շահաստանի, 'ի պարգևագրի Հեթմոյ արքայի առ Վենետիկեցիս, յամսեան Նոյեմբերի 1261 ամի[3]. յորում, ոչ լոկ որպէս յառաջինսն՝ Տարսոն, Սիս և Մսիս ընծային օտարազնեայց 'ի բնակութիւն և 'ի վաճառաշահութիւն, այլ և Այաս, որ 'ի լատին թարգմանութեան պարգևագրին (զի կորուսեալ է հայ բնա-

1 Այս այն Լիւսիաս է որ յետոյ զՔառասունսն նահատակեաց 'ի Սեբաստիա։ — Ի Վկայաբանութիւնս՝ Եգէա ասի քաղաք Յոնիոյ? ծոցոյն, չփոթելով թերևս ընդ այլոց համանուն քաղաքաց՝ յորոց մին յԵւոլիա, միւսն 'ի Մակեդոնիա. կամ լաւ ևս արդեօք կարծել՝ այսպէս անուանեալ յանուն Յանէոյ գլխոյ՝ որ առ Մալլոսի։

2 In provincia Ciliciæ Egea dicitur civitas, ubi quadraginta dies commercia geruntur, et nemo de eis aliquid requirit: sed post 40 dies qui inventur negotium facere fiscali redit. — Theodor. *De Situ Terræ Sanctæ*.

3 Այս Պարգևագիր, որ սակաւ ինչ փոփոխութեամբ կրկնութիւն է տուեցելոյն յամի 1245, չէր ծանուցեալ Լանկլուայ և ոչ այլ ումեք, վասն որոյ և բանիբուն Գրագետն Շդուդկարտայ՝ Հայտ՝ որ գրեաց զՊատմութիւն վաճառականութեան գաղթականաց Իտալիոյ յԱրևելս, զառաջին յիշատակ Այասայ համարի գտանել 'ի Պարգևագրի Լևոնի Բ յամի 1271. (Hayd, Le Colonie Commerciali degli Italiani in Oriente etc., I, 301.) մինչ 'ի նմին ամի (1271) գտանին դիւանական գրուածք յԱյաս, յորս յիշի և հասարակաց տուն Գենուացւոց անդ, Logia Januensis. ուրեմն՝ գէթ ամօք ինչ յառաջ հաստատեալ էր նոցա անդ։ — Զպարգևատու հրովարտակս այս Հեթմոյ՝ տեսեալ Յովհաննու քահանայի ժողովրդապետի Վենետաց և նօտարի նոցուն 'ի Պտղոմայիս, հայերէն բնագրով և ոսկի կնքով թագաւորին, հանդերձ լատին թարգմանութեամբ արքեպիսկոպոսին Տարսոնի, վաւերացուցանէ 'ի 6 փետրուարի յաջորդ տարւոյ, (բայց ըստ Վենետաց՝ տակաւին 'ի 1261, զի տարեգլուխ նոցա յամսեան մարտի էր). և այս են բանք նորա. Ego Johannes presbiter et plebanus Sancti Marci de Accon, Notarius et Ducalis aule Veneciarum Cancellarius, auctenticum hujus exempli sigillo aureo sigillatum vidi, et coram me legi feci litteris Arminorum; et sicut in auctentico continebatur ita vidi in aliud exemplum sumptum litteris latinis, per manum Archiepiscopi Torso, sicut dicebatur; quod et meo signo proprio ipsum corroboravi de mandato domini Johannis Belligni Bajuli in Accon, Tyro et in omnibus partibus Cismarinis, et ejus consiliarium, pro Domino nostro Duce; Currente anno ab Incarnatione Domini Nostri Jhesu Christi millesimo duecentesimo sexagesimo primo, mense februaris, die sexto, exeunte Indictione quinta. Accon.

գիրն), Jatia գրի, (թերեւս վրիպեալ A կամ La սկզբնատառից). « Et apud Jatiam dabimus eis locum ad fa» tiendum domum ». այսինքն, շնորհի Վենետաց հաստատել և յԱյաս տուն բնակութեան. յառաջնումն քան զայն պարգեւագրի՝ որ յամի 1245, շնորհէր նոցա Հեթում տուն 'ի Մսիս, որով յայտնի՝ զի չեւ եւս պատրաստեալ էր Այաս. իսկ զի իբրեւ նորոգ իմն յետ այնր յիշի Այասդ յամի 1261, հաւանելի է թէ դեռ նոր 'ի մերձաւոր ամս հանդիսացեալ վերացեալ էր յԵգէական ալեաց՝ նոր դշխոյս Ծովուն Հայոց. որ և 'ի սակաւ ամս (իբր 80 կամ 90) հայկական կենդանութեանն, թերեւս ճոխագոյնս պճնեցաւ և ամբարեաց գանձս 'ի մթերից շահավաճառութեան երկուց ծագաց աշխարհի, քան յոլովք 'ի շահաստանաց այլոց աշխարհաց 'ի բազմադարեան ժամանակս. զի ոչ հանգոյց մի սոսկ էր մեծի ճանապարհի վաճառականութեան արեւելից, այլ մարթ է ասել թէ և գլուխ և կենդրոն հանգրուանաց:

Հռչակագոյնն և գերագոյն համարեալ 'ի ճանապարհորդըս և 'ի ճանապարհագիրս միջին դարուց՝ Մարկոս-Պօղոս (Marco-Polo) Վենետկեցի, որոյ հայրն և հօրեղբայր յամի 1269՝ յարեւելից Ասիոյ եկեալ էին յԱյաս, ոչ միայն ընդ նոսին և ինքն աստուստ յետ երկուց ամաց (1271), արար զսկիզբն երկարաձիգ ուղեւորութեանն յաշխարհս Թաթարաց, Հնդկաց և Ճենաց, և հայկական նաւու չուեաց 'ի Պտղոմայիս, այլ և վկայէ 'ի սկիզբն գրոցն՝ եթէ ամենայն ոք որ կամիցի 'ի խորին Ասիա երթալ, զսկիզբն ճանապարհին առնէ յԱյասայ. զորոյ վըկայութիւն՝ իբրեւ վաւերական՝ արժան համարիմ յեռուլ 'ի կարգ բանիցս. Sopra il mare è una città detta Giazza, terra di gran traffico. Al suo porto vengono molti mercanti da Venetia, da Genova, et da molti altri regioni, con molte mercantie di diverse *speciarie, panni* di *seta* et di *lana,* et di altre *pretiose ricchezze:* et ancho quelli che vogliono intrare più dentro nelle terre di Levante, vanno primieramente al detto porto della Giazza. Ըստ այսմ և մուրհակք վաճառականաց Գենուացւոց յայն ամս (1274) որոշակի կոչեն Նաւահանգիստ Թագաւորին Հայոց. Portus Ayacii Domini Regis Ermenie.

ՅԱյաս հաւաքէին 'ի խորոց Ասիոյ՝ ախայխիրքն, համեմունք, ականք, հիւսուածք և ամենայն պատուական աղխամաղխ, զոր յաճախօրէն գնէին Վենետկեցիք, Գենուացիք և Պիզացիք, յորս յաւելան մի ըստ միոջէ գրեթէ ամենայն ազատ քաղաքացիք Իտալիոյ. և յիշատակին յանուանէ 'ի դիւանս և 'ի մուրհակս՝ ոչ միայն ծովեզերեայքն այլ և միջերկրեայք, Փլորենտացիք, Պիաչենցացիք, Պաւիացիք, Անկոնացիք, Մանտուացիք, Լիվոռնեցիք, Սիկիլիացիք, Պուլիացիք, Սաւոնացիք ('ի Կորսիկայ), այլ և Մալտացիք, Նեկրոբոնդեցիք, յայտ է թէ և Կիպրացիք, Հռոդացիք, Կրետացիք և այլ կղզեցիք. իսկ յայլոց արեւմտեայց յիշին՝ ազգք ազգք Սպանիացւոց, Կատալանք, Սիցիլիացիք, Պարցելոնացիք, Սարակուսացիք, Մայորիկացիք. 'ի Փռանկաց՝ Մարսիլիացիք անդստին յամէ 1228 յիշատակեալք, Պրովինցիալք, Նիմիացիք (Nîmes), Նարբոնացիք, [1] Մոնպելիեցիք՝ Մուերուզլերցի վաճառականք գրեալ 'ի հայերէն պարգեւագրին Լեւոնի Դ, յամի 1321. յիշին և Հիւրանեցի և Տաճարական Ասպետք, և նաւք Տարանդի յառին եպիսկոպոսին: Իսկ յարեւելեայց՝ հպատակքն կայսերաց Կոստանդնուպօլսի և Տրապիզոնի, Եգիպտացիք, իշխողք ափանց Ասորւոց, Տանիշմէնք Սեբաստիոյ, և հպատակք մեծի ինքնակալութեան Թաթարաց՝ 'ի ծագաց արեւելից: Յարեւմտեայս՝ թէ և չգտի առանձին յիշատակ նաւու կամ դաշնակցութեան այժմեանս դշխոյի վաճառականութեան՝ Անգղիոյ, այլ չիք երկբայել թէ և սորա յառաջընծայքն վաճառազանձ նաւուց, (եթէ օրէն իցէ ասել), մտանէին և ելանէին ընդ Այաս. քանզի ծանօթարար վաճառակցութեան Հայոց ընդ օտարացս՝ Փլորենտացին Բեկոլոտդի՝ կարգէ և ըղհամեմատութիւն չափուց Լոնտրայի ընդ հայկականացն. այսպէս և զՖլամանն վաճառականաց Պրիւժի, որ յայնմ ժամանակի առաջին վաճառաշահ քաղաք համարէր յարեւմուտս՝ զոյգ ընդ Անվերսայ [2]: Եկք 'ի քաղաքաց Գերմանիոյ ոչ յիշին յԱյաս, թէ և անմարթ համարիմ չգալ 'ի հռչակաւոր ծովեզերեայ շահաստանաց նոցուն և 'ի Հանսա (Hansa, Hanse) անուանեալ վաճառական ընկերութեանց ծովեզերեայ քաղաքացն (Պրեմայ, Լիւպէքայ, և այլն), մանաւանդ զի յաւուրց Լեւոնի մեծի՝ ընտանութիւն էր երկոցուն ազգացն, և դեսպանք Աւստրիոյ եւս յիշին առ նա եկեալք: — Սակս այսքան յաճախելոյ արեւմտեայց յԱյաս, ոմն յայժմու գրչաց նոցին՝ ախորժեաց կոչել զայն՝ առաւել եւրոպական քաղաք քան հայկական [3]: — Ի մուրհակս սակաւ ամաց պահեալս 'ի դիւանս Գենուայ՝ ոչ պակաս քան զքսանևհինգ ազգաց

1 Յիշին յամի 1300 Սպանիացիք ոմանք գնեալ 'ի Ֆամակոստա Կիպրոսի 'ի Նարբոնացւոյ վաճառականէ 15 կենդինար Նաւշադր եկեալ և մաքրեալ, առ 'ի տանել յԱյաս, և հատուցանել անդ 100 դրամ հայկական առ միոյ կենդինար. և յամի 1316 Պարցելոնացիք՝ բերեալ 'ի Հայոց բամբակ 'ի Վենետիկ: — Ըստ խնդրոյ Յակոբայ Բ թագաւորի Արագոնայ՝ յամի 1293 Հեթում Բ շնորհեաց Կատալանաց ազատութիւն մաքսից, և խրատեաց հաստատելոյ հաշուէտուն յԱյաս. Պարգեւագիրն տակաւին ոչ գտաւ, այլ աներկբայ են իրքն: — Ընդ վաճառականս յիշի փոխատու և փոխառու յԱյաս՝ և Յակոբ Թագաւոր, Jacobus Rex, յամի 1274, յորում թագաւոր Արագոնիոյ էր Յակոբ Ա:

2 Պարգեւագիրք կամ Դաշանց թուղթք թագաւորաց մերոց ընդ Ֆլամանս՝ չեն յայտնեալ. բայց հմուտ դիւանապետն Պրիւժայ Emile Vanden Bussche, առանձինն խնամով և ըստ խնդրոյ մերոյ՝ յուզեալ եգիտ յիշատակս երթևեկի և վաճառակցութեան երկոցուն ազգացս, մեր և նորայոյն. 'ի ցուցակի միում նշանակին՝ զի շահաստանք յոր երթային նոքա՝ են Հայաստան, Կիպրոս և Երուսաղէմ. « Die steden ende poorten van coopmanscepe uutten Ooste die mette die van Brucghe coopmanscepe doene; ende syn de *Hermeniers*, ende die van Cypre, ende van Jherusalem ». — Յայլում փռանկերէն ցուցակի առի ընդունել Ֆլամանաց 'ի Հայոց զբամբակ, զհամեմունս, պղպեղ, որդան փայտ, և այլն: « Dou royaume de Hermenie vient Contons et tote autre Espicerie dessus dite », (Poivres, Bresis, etc.). — Ի հաշուէգիրս Ս. Աւպերդ վանաց (S. Obert) Պրիւժի՝ նշանակի յամի 1369, տուեալ Նիկողայոսի Հայոյ (թուի դեսպան) վասն առաջերիցուն կամ եպիսկոպոսի (prelat) որ էր ընդ նմա՝ նոր չուխայ մի, և ընկերաց նորուն՝ որք մտին ընդ Ս. Խաչ դուռն՝ 12 լիբրայ. « Betaelt Niclaise, den Hermenier, ene nieuen lakine voor den Prelate, ende oordene die quamen ten Cruuspoorte inne t' eenre dachvaert XII. lb. » — Զայսոսիկ հրատարակեաց յիշեալ Դիւանապետն՝ մասամբ 'ի La Flandre ամսաթերթի (1880, Ա), մասամբ ուրոյն գրուածով՝ *Une Question d' Orient au Moyen-âge* (1878), 'ի Պրիւժ, եւ և առանձին թղթով առ խնդրողս:

3 Ville plutôt européenne qu' arménienne, elle est devenue comme le centre de tout le commerce du Levant. — *Archives d' Orient-Latin*, I.

*և քաղաքաց ենք յիշին յԱյաս. և գլխաւորք յայնքան խառնիճաղանճից միջի՝ գտանին Գենուացիք և Վենետկեցիք, յորոց դիւանս պահին ցարդ ոչ սակաւ պարգևագիրք, մուրհակք, վճիռք և հրամանք վաճառականութեան և նաւարկութեան. 'ի հերուն (1881) հրատարակեցան 'ի դիւանս Լատին Արևելից՝*[1] *հարիւր և ութսուն այսպիսի մուրհակք գունցից (հիւպատից) Գենուացւոց յԱյաս, և այն երկուց ևեթ լոկ ամաց (1274, 1279), յորոց է գուշակել զանբաւութիւն ոչ միայն այսպիսի գրուածոց նոցին և Վենետաց*[2] *և այլոց՝ յամս անդ պայծառութեան Այասոյ, այլ և զբազմագումար մուտ և ել վաճառուց և վաճառաբարձ նաւուց։ — Վենետկեցիք կանոնեալ սահմանաւ և ժամանակաւ ամի ամի առաքէին խումբ մի եօթն կամ ութ նաւուց, և երբեմն երկու խումբ, մի յամսեան օգոստոսի, և միւս կանուխ յապրիլի (կամ յելս յունիսի, ըստ որում և այլք). մէն միում նաւուց քսանևհինգ նաւաստի էր, զատ յառանձնակ նաւօղաց. և ամի ամի վճռէր ծերակոյտն զերթևեկն և զժամանակ կալոյ մնալոյ տորմղին*[3]*. գտանին վճիռքս յամէ 1280 ց1337. այլ մինչև 'ի 1374 ևս յիշին սահմանք ինչ վասն նաւարկութեան 'ի Հայս։ Եթէ գամ մի գումարեսցուք ընդ Վենետկեայցս և ընդ Գենուացւոց զայլոց ևս նախաթուեալ ազգաց և քաղաքաց նաւեարն և նաւաղն, որպիսի՜ խուռն ամբոխ և զանազան կերպարանս ընծայիցէ յայնժամ Այաս, պէսպէս գունովք, դրօշուք, բարբառովք, որպէս զմի 'ի նախադաս նաւակայից և շահաստանաց այնր և ամենայն ժամանակի։ Բարունն Թովմաս՝ զոր տեսաք սուղ բանիւք ստորագրել զհանգամանս կամ զերեսս աշխարհին Կիլիկիոյ, համառօտէ և զայս միով միայնով, այլ քաջ նշանական և վճռական՝ յասելն և 'ի լռել.*

« Եւ Այաս՝ նաւահանգիստ նաւաց բազմաց »։

*Համառօտագոյն ևս և ազդողագոյն 'ի մի բառ բովանդակէ այլ ոմն՝ զշնորհս քաղաքին, 'ի յիշատակելն յետոյ ուրեմն զարկածս ժամանակին և զսորայն կորուստ. ասէ,* Պանծալիս այս Այաս ։

140. *Որպիսի՜ և որչափ էր գոգն և կայան որ ընդգրկէր զտորմիղդ, և որպիսի՜ պատսպարանս ընծայէր, խընդրեն միտք հարկաւորաբար. — և քանզի առ այս ոչ պատասխանեն բարունք մեր հինք համառօտաբանք կամ զանցառուք, առաջի արասցուք զայժմու նկարեալ կերպարանս ափանց Այասոյ, զամբարտակին և զմոլինայն, որչափ ինչ մնացեալ է 'ի քանդուածոյ խուժանի հրոսից և ալեաց, ըստ հարևանցի գծագրութեան անգղիացի և փռանկ ծովապետաց։ — Ի նախնեաց վկայութենէ գիտեմք զի երկու բերդք էին Այասու, մին 'ի ցամաքի, միւս 'ի ծովու. յայտ է թէ յետինս կայր 'ի ձեռագործ կամ 'ի բնական կղզեկի,* (Insula Ayacii, *ըստ դիւանաց*)*. այլ յաւէտ մարթ է ձեռագործ ասել ըստ շինութեանցն, թէ և ոչ հաւասարէր ամրութեան ցամաքայնոյն, բայց եթէ ծովային ալեացն շրջափակութեամբ. և ամբարտակ 'ի հարաւոյ արևելից կցէր զերկոսին բերդերն, գործելով և պատսպարան նաւուց. և որպէս երևի 'ի դոյզն տախտակիդ՝ լուսնաձև կայր ծովային շինածն յարևելից կուսէ հանդէպ ցամաքին. և ըստ ձևոյն՝ արաբացի բանիւ մինայ և ըստ մերոցս՝ մանեակ կոչիւր նաւահանգիստն։ Տարածութիւն նորին համարի արդ իբրև բնամղոն մի, և թէպէտ խցեալ է՝ աւազոյ և խճոյ կուտակմամբ, այլ ուրեք 2 և 3 և 4 չափ խոր է։ Սանուտոյ վենետկեցի՝ որ ետես զԱյաս մինչ 'ի շքի և 'ի չարժման էր, ասէ. « Այաս ունի » նաւահանգիստ և խրուտ կամ խարակ մի 'ի հանդիպոյ՝ » զոր մարթ է ժայռ կոչել. յայն խարակ մխեն հաստատեն զձողանս և զխարիսխս 'ի ցամաքն կոյս*[4] *»։ Որիշ յայտնանէ թուին Անուրք յորմունս ծովային բերդին, յորս՝ խնդրեցին Վենետկեցիք (յամի 1320) կապել զնաւս իւրեանց, և արքունի հրովարտակաւ շնորհեցաւ խնդիրն՝ հանդերձ այլովք։ — Բերդն արտաքին կայ 'ի ծագ ցամաքին՝ լեզուաձև ցցուեալ 'ի ծով, կոփածոյ վիմօք կառուցեալ հանդերձ զուգմամբ բեկորոց սեանց հին շինուածոց, յորս և մնացորդք յոյն արձանաց. բազում անգամ աւերեալ յԵգիպտացւոց և վերստին շինեալ 'ի Հայոց, և դարձեալ քանդեալ, և յետ վտարանդութեան նոցին՝ միւսանգամ կարկատեալ յՕսմանեանց, թուի զառաջին ձևն պահել չափաւորապէս. կրկին ունի պարիսպս, ներքինն բարձրագոյն և բոլորչի աշտարակօք, արտաքինն՝ ցածագոյն, որք մեծաւ մասամբ խանգարեալ են, և շուրջ պատէ պարկէն փոսոյ, յորում հոսեալ երևին գերբուկք և քարեղէն գնտակք պարըսպացն բաղխիչք։ Ի հիւսիսոյ կուսէ բերդին առ ծովեզերին է գերեզմանատուն։ Երևին 'ի ծովու մնացուածք ամբարտակին, որ 'ի հարաւոյ և արևելից տանէր 'ի ծովային բերդ ընդ հիւսիսի արևելից. ուր արդ երևի աշտարակ մի մեծ բոլորաչէն, և 'ի հարաւոյ կուսէ երկայնաձիգ շինուած կամարակապ սենեկօք, լուսամուտս ունելով քառակուսիս 'ի ձեղուանն. և այլ կամարք՝ արդ խցեալք՝ յառաջոյ կուսէ։ — Ընդ մէջ ցամաքային բերդին և վտակի միոյ փոքու իջելոյ 'ի լերանց 'ի հիւսիսոյ՝ կան աւերակք հնագոյն մասին քաղաքին կամ Եգէայ, աղիւսաշէն եկեղեցեաց, բաղանեաց, և կամրջաց. յայնկոյս գետակին՝ յարևմուտս՝ մնացուածք նորոյ քաղաքին Այասոյ, գերբուկք տանց յաղիւսոյ և 'ի քարէ, բեկորք բրտեայք և պաղպաջուն կճեայք։ Ի բերդին բնակեն արդ 'ի գձուձ տնկունս՝ սակաւ ընտանիք Թուրքմանաց, (ոգիք 75 ըստ Լանկլուայ, յամին 1852), իբրև ստուերք նախնի բազմամբոխ մարդկան բնակչաց և եկաց այնքան ազգաց և լեզուաց։ Թերևս յաւերակս անդ տապաստ դնին և արտաքին պարիսպք քաղաքին, թէ և ոչ յիշին 'ի նախնեաց, որպէս և ոչ դրունքն. բայց զմի յայտնանէ ցուցանէ մուրհակ մի դիւանաց Գենուայ, Ալամանաց դուռն կոչելով,* Porta Alamanorum, *ուր էր վաճառա-*

1 *Ընկերութիւն է Գիտնոց հաստատեալ յամի* 1875. Société pour la publication de Textes relatifs à l'Histoire et la Géographie de l'Orient Latin.

2 *Այս ազգ գրուածոց գտանին և 'ի Դիւանս Նոտարաց Վենետկոյ՝ ոչ սակաւ, այլ ինձ ոչ յաջողեաց քննել, որպէս զայլ բազում գրուածս 'ի մեծի Հասարակաց դիւանատանն* (*Archivii Publici*)։

3 *Զառաջինն ունի աւուրս միայն, այս 13 և 15 ևս*։

4 Lajacium habet portum et *siccam* unam ante, quæ *scolium* dici potest; ad quam quidam siccam prodenses figuntur et anchora versus terram firmam. — Sanudo, II, IV. 26.




170. Յատակագիծն Այասայ և երկոցուն բերդիցն.

տուն կամ ապարանք (logia) Յովհաննու ուրումն՝ Tortorelle (Տառրակ) կոչեցելոյ։

Գլխաւորաց ազգաց՝ զոր խառն յիշեցաք 'ի վեր անդր, էին իւրաքանչիւր զատուցեալ Թաղք բնակութեան, ոմանց՝ հանդերձ եկեղեցեաւ իսկ, փնդըկօք և մթերանոցօք, և ապարանօք ազգապետին, որ սովորաբար Console կոչիւր, Գոնսոլ յեղեալ 'ի Հայոց, կամ Վիգայր (Vicaire, որ է երեսփոխան կամ տեղակալ), և ապարանք նոցին՝ Logia կամ Lobium, ուր և դատարան նոցին, Curia. յանուանէ յիշին ապարանք Գենուացւոց, Վենետաց և Պիսաչենցւոց։ — Առաջնոցն էր և եկեղեցի յանուն Ս. Լաւրենտիոսի, յոր յետոյ ուրեմն փոխադրել կամելով Յովհաննու ԻԲ Պապի՝ զլատին արքեպիսկոպոս Մամեստիոյ՝ յամի 1322, հակառակ կային Գենուացիք, սեփական իւրեանց ասելով զտաճարն։ Յիշին ոմանք յեկեղեցպանաց նոցին, (Prior Sancti Laurentij). որպէս, Միքայէլ երէց, յամի 1274, և Յակոբ՝ յամի 1279, և քահանայք Յովհան և Յակոբ 'ի նմին ամի։ Յեկեղեցւոջ աստ Թաղեալ են Գենուացիք վախճանեալք յԱյաս, որպէս յայտնի 'ի կտակաց նոցին, տալով իւրաքանչիւր հողագին 20 նոր դրամ հայկական։ Իսկ գունցք Գենուացւոց յԱյաս՝ ստորագրողք վերոյ նշանակեալ մուրհակաց դիւանացն՝ և այլք ոմանք յիշեալք, են, յամս

1270. Բալլավիչինոյ Յակոբ, Giacomo Pallavicino.
1273? Օչելլի Գրիգոր, Gregorio Ocelli. † Նախ քան զամն 1274։
1274. Ֆիլիբբի Դարդարոյ, Filippi Tartaro.
1279. Լէոնին տէ Նիկրոյ, Leonin de Nigro.
1288. Պէնէթ Զաքարէ, Benetto Zaccaria.

Յիշի սա 'ի վաւերական պարգևագրի Լևոնի Բ, որ բազում շնորհս և Թեթևութիւն բաժից արար, որպէս տեսցի յետոյ 'ի բնագրին, 'ի շնորհս «կատարեալ և հաւատարիմ սիրելոյն Սիր Պենեդ Զաքարիին, վասն Ճըշմարիտ» ... 

Յիշի սա 'ի վաւերական պարգևագրի Լևոնի Բ, որ բազում շնորհս և Թեթևութիւն բաժից արար, որպէս տեսցի յետոյ 'ի բնագրին, 'ի շնորհս «կատարեալ և հաւատարիմ սիրելոյն Սիր Պենեդ Զաքարիին, վասն ճըշմարիտ» նուվեզ վաճըռկներոյն»։ Յիշի և Մթերանոց Գենուացւոց՝ յամի 1279 (Magassenum Communis Januæ), և առանձնականաց փնդուկք. որպէս Պագոնի ուրումն Ծէպէ կոչեցելոյ (Bacon Zebe), Գուլիելմոսի Կրիֆոնի (Guililemo Grifon), և կնոջ այլոյ Գուլիելմու Strejaporco կամ Stregghiaporto կամ Salvatico կոչեցելոյ[1], յամի 1289, զոր Հեթում Բ 'ի սկզբան պայազատութեանն՝ դարձոյց անդրէն առ Գենուացիս, ըստ խնդրոյ Նախայիշեալ Պէնէթի Զաքարէի։

Էին և Վենետաց Տուն Հասարակաց[2] յԱյաս, (Domus Communis Veneciarum), շնորհեալ նախ 'ի Հեթմոյ Ա, որպէս յիշեցաք 'ի վեր անդր, յամի 1261, և փաձառանոցք, և որ ինչ պիտոյ էր բազմաթիւ գաղթականի վաճառականաց, որոց անընդհատ տուրևառ էր ընդ Հայս, ընդ օտար ազինս և ընդ մայրաքաղաքին իւրեանց Վենետկոյ. եկեղեցի նոցա Ս. Մարկոս անուն՝ շնորհեցաւ յաւուրս Լևոնի Բ յամի 1271, զի ազօթեսցեն անդ վասն իւր և վասն ննջեցելոց իւրոց, որպէս ասէ Թագաւորն 'ի պարգևագրին[3]։ Առ եկեղեցեաւն էր անշուշտ և Գերեզմանատուն նոցին, որ զի փոքր էր՝ 'ի համար բազմութեան եկաց նոցին, յամի 1320 խնդրեցին յարել 'ի նոյն զմասն ագարակի միոյ (masenum)[4], և շնորհեցաւ արքունուստ։ Գլխաւորն Վենետաց և փոխ՝ կոչէր Պայլ, և վարէր խորհրդականօք ոմամբք, և ցորչափ ազատ էր Այբեաս՝ ընդ ձեռամբ Պայլի նորին էր, և 'ի նմանէ ընդունէր զԹոշակն՝ 400 կամ 600 բիզանդ, և յերթալն առ Թագաւորն Հայոց՝ բիզանդ մի ևս աւելի աւուր աւուր։ Յիշին 'ի հրամանագիրս ծերակուտի նոցին և յայլ դիւանական գրուածս՝ այսոքիկ Պայլք յԱյաս, յամէ 1274 մինչև ցամն 1334.

1282–3. Մարին Պատոէր, Marino Badoero.
1285. Լէոնարտոյ Ճիզի, Leonardo Gizi.
1288. Մարկոս Սինիոլոյ, Marco Siniolo.
12... Յովհան տէ Գանալի, Giovanni de Canali.
1290. Բագրատ Յուստինոս, Pancrazio Giustino.
1293. Ենրիկ Տէլֆին, Enrico Delfino.
1296–9. Մարինոյ Սինիոլոյ, Marino Siniolo.
1300. Պօղոս Գուիրինոյ, Paolo Quirino.
1302–3. Անդրէաս Սանուդոյ, Andrea Sanudo.
1304. Յովհ. Բրեմարինոյ, Giovanni Premarino.
1306–9. Նիկողոս Մորոզինոյ, Nicolò Morosino.
1310–2. Գրիգոր Տոլֆին, Gregorio Dolfin.
1313–6. Յուստին Յուստինեան, Giustino Giustinian.
1317–8. Փիլիպպոս Պարպարիկոյ, Filippo Barbarigo.
1318–9. Պելէդ Տանտոլոյ, Beletto Dandolo.
1320–2. Յովհաննէս Գարոզոյ, Giovanni Caroso.
1326. Վլաս Մալիբիէրոյ, Biagio Malipiero.
1328-30. Պետրոս Պրակատին, Pietro Bragadin.
1333. Նոյն Պետրոս.
1333–4. Մարինոյ Կրիմանի, Marino Grimani.

Յտասն կամ հնգետասան ամ ևս յետ այսր՝ գտանին յիշատակք բանակցութեան Վենետացւոց ընդ արքունեաց Հայոց, այլ առանձինն յիշատակք Այասոյ լռեն այնուհետև. իսկ 'ի նշանակեալ յայնմ վաթսնամեայ միջոցի տեղակալութեան Պայլից Վենետաց յԱյաս, բազում անցք անցեալ են ընդ երկոսին ազգսն, յաճախ բարեկամութեամբ և դուն ուրեք և հակառակութեամբ, զորս ծանր վարկանիմք մի ըստ միոջէ խուզել և նշանակել, բայց եթէ ինչ ինչ յետոյ 'ի կարգի դիպաց և պատահարաց քաղաքին, այսպէս և զգործս այլոց ազգաց՝ ընդ իրեարս և կամ ընդ մերայոցս Հայոց։

Սպառսպուռ քանդումն քաղաքին և կորուստ յիշատակարանաց՝ մանաւանդ ազգայնոցս՝ չտան ստուգել զդիրս

1 Դուստր նորա Կոմսուհի կոչեցեալ (Contessa) յամի 1300 զկէս տեղւոյն վաճառեաց և զկէս վարձեաց, 'ի հանդերձանս հարսանեաց իւրոյ դստեր։

2 Ոչ գիտեմ նոյն Թէ որիչ տուն էր բնակութեան Պայլին, զոր՝ բազում անգամ վճարեաց ծերակոյտն Վենետկոյ՝ նորոգել, տապաքելով և զծախսն, մերթ 5, մերթ 6 և մերթ 12 լիրայ կրոսից, որոց մին էր 10 ոսկի նոցա. և մի 'ի Պայլեացն (Սինիոլոյ) 'ի Վենետկոյ բերեալ էր նաւուք զփայտս շինութեանն՝ յԱյաս, յամի 1299։

3 Et nos octroyons et donons en Layas la cité une yglise, et che il tienent prestre à servir l' iglyse, en memoire de nos et de nos mort. Ի պէտս նորոգութեան եկեղեցւոյս՝ յամին 1314՝ վճարեաց ծերակոյտն տալ 10 կրոս լիրայից, իբր 1200 ֆրանգ յայժմուս։

4 Այսպէս գրի 'ի հրովարտակին Լևոնի Դ, և յօտար դիւանս Լատինաց գրի ևս Masgnellum, Mansionile, և 'ի փռանկաց Maisnil.

Զիք երկրայել թէ ուրոյն 'ի յիշեցելոցս աստի ընկերութեանց և հասարակապետութեանց՝ առանձնակ վաճառականք և նաւք յայլոց կողմանց երթևեկէին յԱյաս. յորոց զմի 'ի հնագունից և յառաջնոց իսկ՝ հանոյ թուեսցի յիշել վասն կարևոր ինչ ծանօթութեանն, և վասն զի յազգայնոցս է աւանդեալ, յամի 1271. Յոյն ոմն ազգաւ՝ անուն Պետրնաֆեռ, որ ըստ հայերէն յիշատակագրի մերոյ՝ «Թարգմանի Յղայ-պարոն,... յոյժ բարեպաշտօն

Ծանուցանեմք ձեզ ամենեցուն որք այժմ էք և որք ըղ-կնի մեր գալոց էք. Քանզի որպէս աւրէն և սովորութիւն է թագաւորաց բարեպաշտից 'ի Քրիստոս Աստուած հաւատացեալ երանելի Նախնանցն մերոց և մեր, պատուել զամենեսեանն առատաձիր պարգևաւք զաւտարս և զընտանիս, յաստուածային առատաձեռնութեան պարգևացն՝ որ տուեալ է մեզ 'ի վերուստ, այնոցիկ որ խնդիր ելանեն մերոց պարգևացն, Նայ ըստ այսմ աւրինակի եկին առաջի մերոյ թագաւորութեանս սիրեցեալ և ականաւոր բնակիչքն Սիծիլոյ, և խնդրեցին պարգևս 'ի շնորհս մերոյ թագաւորութենէս տարածանել յիւրեանքն աւհասարակ. Նայ վասն պածառ և երևելի իշխանին՝ շնորհաւքն Աստուծոյ թագաւորին, և մեր պանծալի հաւրն Ըռէ Ֆորկայ սիրոյն և հարկեցն՝ ընդունեցաք զիւրեանց խնդրուածքն. պարտ և արժան համարեցաք առնել իւրեանց շնորհս ըստ յուսոյն իւրեանց զոր խնդրեցին 'ի մերոյ թագաւորութենէս, և պարգևեցաք ամէն Սիծիլիանոյն, որք են Սիծիլիանք և Սիծիլիանի որդիք, որք են և որք գալոց են, որ լնին սիրածոյ, հարկևորածոյ, պահած ու Նախախնամած, իւրեանքն իւրեանց անձներովն ու ըռըզակովն, 'ի մեր թագաւորութենէս և 'ի մեր ամենայն հնազանդելոցն. և ունան ազատութիւն, որ զինչ 'ի ծովէն 'ի յերկիրս մոցընեն, և զինչ որ մեր յերկրէս 'ի ծովն հանեն ու տանեն, Նայ զինչ գնեն ու ծախեն 'ի մեր ընթանուր աստուածապահս, Նայ, զայն որ կշեռք մտնէ՝ տան 'ի հարիւրէն երկու, այլ աւելի իրաւունք չտան. թողաք իրենցն. և զայն իրքն որ կշեռք չմտնէ, գնեն ու ծախեն. ազատ լնի 'ի յամենայն ազգ հարկաց և իրաւանց, զարդ 'ի սմսարչէքն, որ սմսարչէք մէն տան. 'ի պաւման՝ որ աւտար Նաւ կամ աւտար գէմնի մարդ կամ ըռըզակ՝ չառնուն հետ իւրեանցն որպէս Սիծիլիան՝ խլըսեն. ու թէ գտնվի ով անէ այսպէս, Նայ կորցընէ զիւր ազատութիւնն յաւիտեանս: — Ու թէ ղալապայ լնի 'ի մեր յերկիրս հետ երկու Սծիլիացն, կամ որ մէկն հայ մարդ լնի, կամ ընդ այլ ազգ կամ արիւն, էնոր իրաւունքն և դատաստանն 'ի մեր դարպասն լնի. և թէ Սծիլան պակասութիւն անէ 'ի մեր երկիրս՝ ժողովըրդեան և կամ թախտան, թէ բուրձէս լնի մեր և կամ բնակիչ երկրիս, որ երթայ զեն կրածն 'ի դարպասն ու գանկտի և յայտնէ զիւր զենն զոր իրն արած լնին, Նայ դարպասն կոչէ 'ի Սիծիլիանցն զով գտնու 'ի մեր երկիրս, որ կենայ ու Սծիլիանովն հաստատէ զպակասութիւնն զոր արել լնին այն մարդուն, յայնժամ Սծիլիան(քն) պարտին որ գրեն թուղթ ու յըղըրկեն 'ի Սծիլիան, թէ այս անուն մարդ 'ի ֆլան տեղ այս անուն մարդոյ 'ի Հայոց զեն արար, ու պակասութիւնն այսչափ իրք. ապա տան տարի մի համբերութիւնն, կամ ըղըրկեն զենն զոր արած լնի, կամ զենին անողն՝ որ գայ վճարէ զոր արած լնի: Ու թէ զենին անողն մեռեալ լնի, Նայ յինչիցն առ-

beatorum parentum nostrorum et nostrarum, honorare omnes largis Gratijs estraneos et intrinsecos sive intraneos, de abundantibus Gratijs nobis datis et concessis de super, illis qui petunt a Nobis, dare et concedere volumus Gratias; Eodem autem modo venerunt coram nobis dilecti et famosi habitatores Siciliæ, et petierunt Gratias Regiæ Mayestati Nostræ dispergere inter nostros comuniter. — Nos autem reputavimus dignum facere eis Gratias fidem spem eorum; et de his quæ petierunt a nobis et concessimus omnibus Sicilianis sive Siculis qui sunt veri Siculi et filij Siculorum, et qui venturi sunt. Quod sint dilecti honorati conservati salvati provisi ipsi personaliter, et eorumdem bona a Nostra Regali Mayestate et ab omnibus obedientibus nobis; et quod habeant et habere debeant libertatem et franchitiam in Regno Nostro: Videlicet, quod quicquid de Mari sive per Mare ad terras Nostras portabunt, et quicquid de Terra extrahent et portabunt per mare vendendo et emendo in terra Nostra, scilicet de illis mercimojis, mercantijs et rebus quæ intrabunt sive ponderabunt in bilancijs sive statera ponderis, dabunt et solvere debeant duos pro quolibet centenario, et nihil plus dabunt; quia donavimus eis et illis rebus sive de illis rebus ac omnibus alijs quæ non intrabunt in bilancijs sive ad pondus bilanciarum, et non ponderabuntur in vendendo et emendo, liberi sint et esse debeant franci et exempti ab omni drictu et dohana, præter Senceragium, quem volumus quod dent et solvant et dabunt.

Et volumus sub promissione et pacto, quod si aliquis Sicilianus sive Siculus venerit ad terram Nostram cum aliqua Navi, sive cum a ligno alio ligno ejus manercici (?) sit et portabit aliquas res sive mercantias alterius universitatis sive Communitatis, francando et expediendo illas mercantias et res tamquam de mercantijs et rebus Siciliani sive Siculi, quod si reperiatur et inventus fuerit, ille talis Siculus faciens talia, perdat et perdere debeat suam franchitiam et libertatem.

Et si erit discordia sive comptentio inter Siculos sive Sicilianos, vel inter Siculum et Armenum seu aliam nationem, cognoscant et justitiari faciant per Curiam Nostram contra delinquentes.

Et si aliquis Sicilianus fecerit aliquod damnum in terra Nostra sive in populo nostro et nostris habitationibus, explorando et expoliando, vel aliquod alium damnum faciendo, si damnificatus erit Burgensis aut habitator terre Nostre, vadat et ire debeat coram Curia Nostra, et ostendat et ostendere debeat damnum sibi datum; per querimoniam tunc Nostra Curia vocet de

» և չի իմաստութեամբ և սիրովն առ Աստուած, նաւաս-
» տի և կատարեալ ճաւապետ, պատմեաց մեզ 'ի քա-
» ղաքն Եգիաս (Այաս), 'ի տաճարն Աստուծոյ որ կոչի
» Ս. Լազար,... (զխնդիր ջրախառնութեան 'ի պատարա-
» գի. քանզի) սոցին իրացս ականատես և ականջալուր
» լեալ էր 'ի Թագաւորեալ քաղաքն' յաւուրս մանկու-
» թեան և առոյգ հասակին. իսկ յորժամ պատմեաց
» մեզ' 'ի կարգ կատարեալ ծերոցն էր, և ամենևին զաղ-
» քատաց հոգայր' սիրով և խոնարհութեամբ և առատ
» տրօք. զի ինքն 'ի Կոստանդնուպօլսոյ էր, և զանցս ա-

նուն' ողորկեն զենն զինչ արած լինին. ու թէ յերբ յիմաց լնի իրանց Սծիլիանց 'ի Սծիլն' մինչ 'ի տարին չըրկեն զենն կամ անաւղըն, ինչ Սծիլացիք կան յերկիրս' բըռնուին, որ վճարեն զենն զոր արելն են Սծիլանքն' մեր բնակչացն, զոր կեցնվի 'ի դարպաս. և իրենք սիրեցեալ' բնակիչքն Սծիլիանքն, որք են Սծիլիան, Սծիլիանի որդիք, որք են և որք գալոց են, բռնած լնին, պահել ընդդէմ մեզ հաւատարմութիւն, և յետ մեր ժառանգաւորացն, յիմայ և յայսկից 'ի յետ ըղորդ և անարատ սէր և հաւատարմութիւն իւրեանց ամենայն կարողութեամբն 'ի ծով և 'ի ցամաք, մեզ և մեր յերկիրս, ամէն ժողովրդեան յոր տեղ որ գտնվին, իւրեանց ամէն կարողութիւն հաւատարմութեան առանց ամէն ազգ խաբէութեան: Ցայսմ հետէ չունի ոք իշխանութիւն 'ի Թագաւորութեանս մերոյ ամենայն հնազանդեցելոցն 'ի մեծամեծաց մինչ 'ի փոքունս' մերոյ Թագաւորական բարձր հրամանիս հակառակ և կամ ընդդիմակաց կալ, կամ փառաւոր և սիրեցեալ բնակչացն Սծիլանոցն ուժ և կամ նեղութիւն առնել, կամ իրմէնցնէ աւելի հարկ կամ իրաւունք պահանջել. այլ մնասցէ հաստատուն ամենայն մի ըստ միոջէ որպէս վերոյ էնք շնորհել, առանց հակառակելոյ ումեքէ: — Վասն որոյ պարգևեցաք իւրեանցն զմեր բարձր Շքեղս[1] և շնորհաւոր բրվիլեճս. և յաղագս առաւել հաստատութեան ձեռնագրեցաք մերով Թագաւորական բարձր ձեռնագրեաւս, և կընքեցաք արքունական ոսկի վուլովս. 'ի փառս անեղին Աստուծոյ. ամէն:

Գրեցաւ 'ի Թվականութեան մարդեղենալոյն Քրիստոսի յաւսոյն մերոյ ՌԳՃԼ. 'ի Հայոց մեծաց Թուիս ՉՁ. 'ի յըն(դ)իքտիոնիս Հոռոմոց ԺԵ, և յամսեան Նուեմբերի ԻԴ. 'ի ջանլերութեան Ցանէս Իրիցանց և արքայհայրութեան Վասլի' ծառայի Աստուծոյ և շնորհողի այսմըն վերնոյգրեալ պարգևացս:

✠ Լեւոն թագաւոր ամենայն Հայոց:

Siculis illis qui reperiuntur in terra nostra, et probato quod damnum passum contra Siculum damnificantem, tunc Siciliani sive Siculi inventi in Terra nostra, obligati sint quod ipsi debeant describere in Siciliam et mictere literas in hunc modum dicendo: Quod, talis Siculus sive Sicilianus fecit tale damnum tali homini in tali loco, et quod damnum, et nominet quantitatem rerum; et detur terminus unius anni istis inventis in terra Nostra, vel quod restituant infra terminem damnum passo sive damnificato, vel quod faciant coram damnificante duci personaliter coram Curia nostra tum rebus, aut restituant damnum passo, aut faciant tantum quod ille qui fecit respondeat coram Curia Nostra habente de presenti. Et quando significata fuerit per Sicilianos predicta indictio, et infra terminum nec damnificator compareat aut res acceptas mictat, tunc dicti Siculi sive Siciliani qui invenierunt in Terra Nostra tunc temporis, erunt obligati et satisfacient damnum passo tantum quantum eorum Siculum fecerit et commisivit damnum dicto habitatori nostro dictæ Terræ Nostræ, in presentia Curiæ nostræ.

Et illi dilecti Siculi habitatores Terræ Nostræ qui sunt et qui erunt Siciliani et filij Siculorum, qui etiam sunt et venturi sunt, obligati erunt observari nobis fidelitatem et erga Regiam Mayestatem Nostram, et post Nos heredibus et successoribus Nostris; et nunc prout ex tunc nostra recta et integra dilectio et fidelitas toto posse suum in Terra et in Mari Nobis et populo Nostro ubicumque inventi fuerint, sit et esse debeat sine aliquo dolo et fraude. — Ex nunc nullus habeat potestatem de his qui obediunt Regiæ Mayestati Nostræ ad minorem usque ad mayorem facere contra aliquos Sicilianos aut violentias aut injuriam inferre, vel petere alicui Siculo, aut exigere aliquod tributum sive damnum; sed obedire omnibus mandatis regalibus nostris. Et remaneant firma omnia et singula, sicut superius concessimus, contrarietate nulla opposita ab aliquo.

Preterea concessimus eis Nostrum eccellens Sigilum et gratiosum Privilegium; et propter majorem firmitatem manu subscriptum per nostrum chirografum rubeum Sigillum aureum per Regalem Bullam auream in honorem Dei.

Datum a Nativitate Domini Nostri Jesu $\overline{\text{Xri}}$ anno M.° CCC.° XXX. et a mayore Computo Armeniæ Septingentesimo octuagesimo, Inditione Romanorum Decimaquinto, mensis Novembris die XXIIIJ.° *Annis Ettrsato*[2], per procurationem *Basilij* Servi Dei Concessoris Gratijs suprascriptis.

✠ Leo Rex omnium Armeniorum (in rubeo).

* Պատճէն լատին թարգմանութեանս զոր ունիմք 'ի ձեռին' գըրեալ և վաւերացեալ է յամի 1605, որպէս տեսցի յաւարտ բնագրին. իսկ 'ի խորագրին կարգի ծանօթութիւն 'ի Նօտարէ, նկարագրելով զոսկի կնիք Լեւոնի, այսու բանիւք. In nomine Domini Nostri, etc. Hoc est exemplum cujusdam Privilegij scripti in armeno, cum quandam Bulla aurea pendenti in filo serico; in qua quidem Bulla ab una scuplta (*sic*) erat quædam imago Regis et litere dicentes: Leo Rex omnium Armenorum, et ab altra parte erat sculptus quidam *leo* cum quadam cruce super dorsum, et hæc litere dicentes, Leo per Dei gratiam Rex Armenorum. — Cujus Privilegij transumpti de armenio in latino tenor talis est.

1 Սիգել, Sigillum, որ է նոյն ինք Հրովարտակն:

2 Pro *Hanes* (Johannes) *Iritzantz*.

» ղէտիցն լալով և արտասուօք ճառէր, » և այլն. և աղաչեաց զպատմեալսն 'ի գրի հարկանել: Դոյզն յիշատակդ՝ զատ յայլոց՝ ընծայէ մեզ աւադիկ և զանուն միոյ յեկեղեցեաց Այասոյ, Ս. Լազար, մինչդեռ այլքն զանխլացեալք մնան առ 'ի մէնջ: — Ոմանց 'ի վաճառական ազգացդ և ընկերութեանց՝ էին և յատուկ նաւամատոյցք կամ բեռնթափք 'ի մինայն Այասոյ, որպէս Տաճարականացն ասպետաց, *Discargatorium* Templi[1]: Իսկ վենետաց՝ քանզի բազում էին անդ եկք և վաճառք բերեալք, և ոչ բաւէր յառաջահմանեալ բաժին նաւահանգստին, վասն որոյ հայցեցին և ընկալան շնորհս՝ յամի 1320, թափել զբեռինս իւրեանց 'ի ծովափնն (splaja), զոր Հայք կոչէին Եալոն կամ Եալու, որպէս ասէ հրովարտակն Լևոնի Դ. յոյն բառիւ, որով վարին արդ և Թուրքք (եալը ասելով):

141. Ի հասարակային շինուածոց և տեղեաց Այասոյ — բաց 'ի հրապարակէ միոյ՝ յորում ասին լինել տունք Գուլիելմու Strejaporchi կոչեցելոյ, — յիշին 'ի դիւանական գրուածս արևմտեայց և մերոց թագաւորաց ոմանց, միայն Արքունի Ապարանքն, Domus Regis Armeniæ, հանդէպ կամ առ դրան բերդի յամաքին[2]. 'ի նմին էին ամենայն պաշտօնարանք և դատարանք. որոց առաջին և գլխաւոր՝ Դարպասն Արքունի, Curia Regis Armenie կոչեցեալ լատիներէն. յերկուս՝ որպէս թուի՝ զատուցեալ ատեանս, մին և վերագոյն՝ Դքսական Դարպաս կոչէր, Curia Ducalis, գլխաւորին՝ Դուքս կամ Տուկ անուանելով ըստ պատուոյ. երկրորդն՝ Պայլական, Balia Regis: Դուքսն թուի փոխանորդ գունդստապլին Հայոց. զի այսպէս գրէ զինքն Պարոն Թորոս՝ յամի 1304, յանուն թագաւորին յԱյաս, ըստ լատին թարգմանութեան (կորուսեալ գոլով հայ բնագրին). Baronus Torocius, Conestabuli Ducha, pro domino Rege, in Lajacio: Յարքունի յապարանս յայս՝ ընդ այլ պաշտօնեայս, քարտուղարս և թարգմանս, հաստատեալ էր և վարժարան լատին լեզուի. զի դիւանական գրուածք յաճախագոյն յայս լեզու հասարակաց արևմտեայց հասկանալի՝ գրէին կամ յեղուին 'ի հայոյն. թէ և գոյին թարգմանք և գրիչք փռանկ, խտալ և արաբացի լեզուաց, որպէս յիշատակին և կան հրովարտակք և ձեռնարկք յայն լեզուս: Յամին 1274 բնակէր անդ ուսուցիչ լատին լեզուի, կամ որպէս ասի, քերականութեան՝ Փիլիպպոս ոմն Սղտանոս մականուանեալ, (Magister Filippus Soldanus, Doctor gramatice). 'ի նմին ամի յիշի յԱյաս և այլ ոմն Իտալացի ուսուցիչ քերականութեան՝ Պետրոս

Suprascriptum et extractum fuit predictum Privilegium de Armenico in latino per me Nuncium *Deotisalvi de Callio* Notarium publicum, secundum interpretationem factam per Dominum Fratrem *Thadeum* Episcopum *Occichensem*, fidelem Interpretem, de verbo ad verbum interpetrantem omnia et singula supradicta, nihil addito vel diminuto quod sensum variet et mutet intellectum predicti Domini Fratris Thadei, in presentia Testium infrascriptorum; Qui Dominus Frater Thadeus Episcopus Occichensis sedens pro Tribunali, quia dictum Exemplum cum Originali in omnibus concordare invenitur, suam authoritatem imposuit atque decretum, ut ubique hoc Exemplum plenam fidem faciet sicut Originale predictum.

Acta fuerunt hæc in Civitate Sissij, in domo habitationis dicti Domini Fratris Thadei; anno Domini a Nativitate ejus M. CCC(XXX)IJ'', Inditione XV.ª, die VI.ª mensis Januarij: Presentibus....

(Desunt nomina. Պակասեն անուանք վկայիցն).

Ego Nuncius Diotisalvi de Callio, Imperiali authoritate Notarius ac Judex Ordinarius, predictum Exemplum de Originali, hic ✠ fideliter transumpsi et exemplaui, ut predictum est, et interpositione dictæ authoritatis et Decreti una cum dictis Testibus interfui, et ea omnia de verbo ad verbum in hanc publicam formam redegi, meoque signo signavi, et robur plenissimum omnium predictorum est.

Ex Originali conservato in Thesauro Privilegiorum Senatus nobilis Urbis Messanæ, Regni Siciliæ primariæ, extracta copia, solitoque Senatus sigillo in pede munitum.

Messanæ, secundo Martij, 3.e Inditionis, 1605.

*Don Franciscus Papardo* pro Regio Magistro Notario.

Et ego Doctor *Petrus de Elhoyo* Inquisitor contra hereticam pravitatem, vidi Privilegium seu Salbaguardiam Originalem de qua istud sumtum fuit, cum suo Sigilo aureo pendente Regis Leonis Armenorum, Missane, et scio reconditum fuisse in archivo scripturarum civitatis Missanæ.

Facta hec certificatio mea manu propria, Messane, tercio die marci, milesimi sexcentesimi quinti.

Doctor Petrus de Elhoyo Hispanus contra....

Ես Տէր Բարդողիմէոս Աբկարացի * այս թագաւորին սերմանէ, հաստատեմ զոր գրեալ է:

Ի կռան պատճէնին գրեալ է, նոյնպէս 'ի սկիզբն ժէ դարու,

Siculorum Franchitia in Armenia de rebus emendis et vendendis.

Ապա նորագոյն գրով յաւելեալ է յետագայ հայերէնդ.

Սիսա Հայոց թագաւորը տվեր է այս բաթէնթան Սիճիլէացոց որ երթան ու գան:

* Ի զարմէ Աբգարու տպագրապետի, որդի կամ թոռն կամ եղբօրորդի նորա. զիա՞րդ և 'ի տոհմէ թագաւորին Լևոնի՝ ոչ է յայտ. սակայն և Սուլթանշահ որդին Աբգարու՝ կոչի 'ի ժամանակակցացն իշխան և ուրփայլաւենդ, Թերևս փոխանակ գրելոյ ուրփայլաստանեղ:

1 Յիշէ 'ի մուրհակի 'ի գրելն յԱյաս յամի 1279 (11 փետր.):
2 « In Castro ante *Portam*, loco ubi Curia tenetur ». Լանկլուա սխալ ընթերցեալ է Portum, համարելով նաւահանգիստ. յայլում գրուածի ևս ասի, Prope Portam, մերձ 'ի Դուռն:

անուն. բազում ամօք եւս յետոյ (1318) Յովհաննէս ԻԲ Պապ՝ առաքէր անդ ուսուցիչս լատին լեզուի միանձունս ոմանս 'ի Դոմինիկեան կարգէ, որպէս ծանուցանէ յԱւինիոնէ թղթովն (գրեալ յ'8 յունիսի տարւոյն), առ Թագաւորն Օշին, գլխաւոր նոցին կարգելով զՀ. Ռեմունդ Ստեփանեան[1]: — Ցարքունի քարտուղարաց լատին լեզուի յԱյաս, յիշին Գուլիելմոս յամի 1274, (Guillielmus, Canzelerius Domini Regis Armenie). նոյն կամ այլ համանուն՝ թարգման կոչի յամի 1304, Guillielmus *Drugomanus* Curie. և Թադէոս եպիսկոպոս միանձն՝ որպէս թուի 'ի նոյն Քարոզողաց կարգէ, յամի 1331:

Յատուկ աւագ պաշտօնեայք Այասոյ՝ էին երկոքին Բերդապահքն, ոչ գիտեմ այսպէս թէ այլազգ կոչեցեալ 'ի Հայոց, զի միայն յայլալեզու պաշտօնական գրուածս գտանեմ՝ Գապիդան (գլխաւոր) կոչմամբ, Capitanus 'ի լատինն, Chevitaine կամ Cevetaine 'ի փռանկ. յամի 1304 բերդապահքն էին Պարոն Լիկոս և Պարոն Կալոժան, առաջինն երևի Ցամաքային բերդին, երկրորդն յոյն անուամբ՝ Ծովայնոյն, որ յատկապէս Միճապան անուանի, այսինքն տեսուչ նաւահանգստի, արաբայի բառիւ. և հարկ է թէ արք քաջ հաւատարիմք և ճարտարք կարգէին 'ի կարևորս այս գործ և տեղի, յորմէ կախէր գրեաթէ կենդանատու սնունդ պետութեանն: Այլ գոգջիր 'ի նմին ամի, ոչ գիտեմ յինչ պատճառս, գժտեալ Վենետաց ընդ մերայոցս, և անպատրաստս գտեալ զոսա՝ նաւատի երկոցուն խալէից[2] (Անդրէի Սանուտոյ և Պօղոսի Մորոզինոյ), յարձակեալք 'ի բերդն Ցամաքի՝ կողոպտեցին զինչս գտելոցն 'ի նմին, ընդ որս և զինչս վերոյիշեալ Պինտոնի Սեգզամարենոէ գունցի Պիզացւոց, (1214 նոր դրամոց արժէիւք). այլ ստիպեալ յարքունի պահանջմանէ՝ հատուցին յետոյ (5 սեպտեմբ. 1307 ամի) 'ի Գարպասին, առաջի Թորոսի դքսի և վերոյիշեալ երկոցուն բերդապահիցն, և այլոց վկայից, յորոց մի էր Վասիլ պանդոկապան կամ կրպակաւոր (tabernarius), վաւերագրութեամբ Գաբրիելի Պերոնեան նօտարի Գենուացւոց[3] և Թագաւորին Հայոց. իսկ յարքունուստ՝ բարձեալ էին 'ի բերդէն՝ ոսկի դիպակս (baldachini) ծանրագինս, (զի պահանջեցան վասն նոցին 18,535 դրամք), և զէնս և զրահս 1096 դրամոց, որպէս և վասն կողոպտի այլոց բերդացեաց[4]: Զայսր ամենայնի ցուցակ ցանկեալ առաքեաց Թագաւորն Հայոց (Լևոն Գ կամ Հեթում Բ) իտալերէն բանիւ. իսկ մուրհակըն անդորրագիր՝ փռանկ լեզուաւ կնքեցաւ յետոյ յ'30 մայիսի, 1307, յԱւագ Պարոնէն (Nous le Grant Seignor), որ թուի ինքն Հեթում Բ, խնամակալ մանուկ Թագաւորին: Յետ այսր՝ նոր խնդրուածս արարին Վենետկեցիք 'ի նմին ամի, և շնորհեցան նոցա յարքունուստ այլ և այլ ազատութիւնք. ընդ որս յիշի զի չև ևս կանգնեալ էր նոցա եկեղեցի 'ի Սիս, և Թագաւորն խոստանայր զի 'ի գալ Պայլին՝ ցուցցէ նմա տեղի պատշաճ[5]: Միւս ևս խնդիր էր նոցա փոխադրել 'ի Սոյ յԱյաս՝ ինչ մի, որ է կարծեմ դատ նոցա յատեանն Սոյ. La cosa de Sisa debbia vegnir a Lajaza. և Թագաւորն հաւանի առնել այնպէս 'ի գալ Պայլին: — Տասն ամաւ ևս յառաջ (1294) այսպիսի գործ աւարհարութեան արարին 'ի ջուրս Այասու՝ չորք բերդանաւք Վենետաց, կողոպտելով զնաւ մի Մարսիլիացի վաճառականի՝ Պետրոս Quatrelingue անուանելոյ, յոր սակս երկար քննութիւնք և գրութիւնք եղեն[6]: — Մեծագոյն ևս գործ հակառակութեան գործեցաւ անդ յերկոցուն հզօր նախանձընդդէմ հասարակապետութեանց, ըստ նշանակելոյ և մերս Հեթմոյ Պատմչի, յամի 1293, (յ'2 յունիսի).

> « Ճնկէզացն երկոտասան խալէ կալեցան յԱյաս՝ ընդ երեսուն և երկու խալէ և ընդ դարիթ Վենեցիանացն, և չահեցան Ճնկէզքն քսանեչորս խալէ ».

զորոյ զվրէժ լուծին Վենետկեցիք յետ ամաց՝ կործանելով զհամարանոցս Գենուացւոց: — Դէպ եղև յայլում նուագի, յետ արձակման Ենրիկոսի Թագաւորի Կիպրոսի յարգելանացն (1310), մինչ դեռ ևս չէր շիջեալ ատելութիւն Հայոց, Էմմանուէլի ուրումն Մարապոդ կոչեցելոյ Գենուացւոյ՝ կողոպտել զՊափոս քաղաք Կիպրոսի և փախչել յԱյաս. հետամուտ եղեալ նմա Կիպրացւոց՝ խնդրեցին 'ի մինապանէն Հայոց. այլ տեսեալ զնա պաշտպան յելուզակին՝ զանգիտեալ 'ի բաց դարձան:

---

## ԴՐՈՒԱԳ (Ե)

### ԲԱԺՏՈՒՆ ԱՅԱՍՈՅ ՇԱՀԱՍՏԱՆԻ

142. Մեծ պաշտօնարան մի ևս էր յԱյաս՝ Պռոքսիմոսի Հայոց, յունական պատուանուամբ, այլ ոչ նովին նշանակութեամբ՝ որ ինչ էր առ Յոյնս՝ Պռոքսիմոսն, Πρόξιμους, օգնական կամ մերձաւոր Դիւանագրի, կամ մեծի իշխանի. այլ ըստ կոչեցելոցն Պռոքսենի Πρόξενοι, որք էին վերակացուք կամ հոգացողք վաճառականութեան. ըստ այսմ և մերքս երևին համարակալք և հրա-

1 Proponimus viros religione claros, devotione gratos, et scientiæ decoræ venustos; videlicet Fratrem *Raimundum Stephani*, Ordinis Prædicatorum, et quosdam alios suos socios; qui subjectum tibi populum verbo salutiferæ prædicationis instruant... et *Latini sermonis* peritiam, functi præceptoris in officio, gratis atque copiose diffundant. — *Epist.* JOHAN. XXII.

2 Այսինքն Galea, նաւ պատերազմական, ըստ մեզ Բերդանաւ. իսկ բեռնաբարձ նաւքն մեծամեծք Դարէթա (Tarita) կոչէին:

3 Gabriel de Perono, Notarius publicus Communis Janue et Dominis Regis Armenie.

4 Որպիսիք են, Օշին արքայեղբայր՝ տէր Կապանու (յետոյ թագաւոր). Օշին Վասիլենց, Վասիլ Կիռ-Սահակենց (Gressachans), Վասիլ երէց, Թորոս Յովհան կամ Յովակիմ (Tros Joabim), Թորոս պայտար (Theros Paitarus), Գրիգոր Ղազար, Կոստանդին վաճառական? (Vassarabam), Ռիմթա տիկին, և այլք, և այլք: — Դարձեալ փոխանակ 300 դրամոց զոր պարտէր Պանտալէոն Գաւրիէնի առ Թորոս Յոհան (Janni), ետ ծածկոց մի ապիտակ (coopertorium), հանդերձ մի կանացի ցփսեայ (guarnacium), բաճկոն կամ զգեստ մի տղայոյ՝ ճամկաւոր (çupam de çendato carmesi), կոնք մի և անօթ մի փայտեղէն՝ որպէս թուի (messara): Զատ յայսցանէ Մարինոյ Սինիոլէ պարտէր Պարոն Օշնի 'ի գումարին Վենետաց 47,000 և տասնեակս ինչ դրամոց:

5 Վճիռ մի ծերակուտին (յ'12 օգոստոսի 1314), հաւանի խնդրոյ Պայլին և շնորհէ գումար ինչ վասն նորոգութեան եկեղեցւոյն:

6 Յիշի և յամի 1331 բողոք Թոմազինոյ Ֆոնդանայ Պիաչենցացւոյ կողոպտելոյ 'ի Վենետաց՝ յԱյաս:

մանատարք պաշտօնէից արքունի մաքսատան՝ որ կոչիւր Բաժտուն 'ի Սիսուան. Հանգունակ իմն ժամանակակից պաշտօնէից Իտալացւոց՝ կոչեցելոց Գունգք վաճառականաց և Նաւորդաց, Consules Mercatorum et Marinariorum, և ըստ Փռանկաց՝ Consules de Mer։ Ցայժմ պաշտաման յիշատակին Պարոն Օշին, յամի 1288, Թորոս տէրն Ճօֆրէկլայի 'ի 1307, Աւշին Եհամնենց 'ի 1314, Պետրոս (խպտ)ենց? 'ի 1321։ — Ընդ ձեռամբ Պռոքսիմոսին էր մաքսապետն Այասու, և կոչէր Գլխաւոր Բաժտանն Այասոյ, և 'ի լատինն Capitanus. ծանօթք յայսց պաշտօնէից՝ են Բակուրան և Պետրոս յամի 1288. Սիր Թորոս Միխայլենց, 1314, Կոստանց, 1321։ Պահին 'ի դիւանս Մոնբէլիէ քաղաքի Փռանկաց՝ երկու արքունի հրովարտակք Հայոց, յորս և ձեռնագիր պատուիրանի Պռոքսիմոսին առ գլխաւորն, այսպիսի օրինակաւ. առաջինն՝ յաւուրս Օշնի, յամի 1314.

**« Ի յԱւշին Եհամնենց Պռոքս. Գիտացիր, Սիր**
**» Թորոս Միխայլենց, Այասոյ Բայժտանն գլխաւոր,**
**» որ առնուս զթագվորին ձեռնգրով բարձր ն(ր)ա-**
**» մանքն, ու իզու ի բայժտանս ի բաբերն. ու արայ**
**» որպէս գրած է ու նամած ի մէկայլ դենն »։**

Սմին նման է և երկրորդն, յամի 1321, 'ի սկիզբն Թագաւորութեան մանկանն Լեւոնի Դ, 'ի Պետրոսէ Պռոքսիմոսէ առ Կոստանց։ — Յիշին յարքունի պարգևագիրս և Տումարք Բաժտանն Այասոյ կամ Հաշուէգիրք, *Quaterni* կոչեալք 'ի լատին Թարգմանութեան[1]։

Բաժտունս այս Այասոյ արժանապէս գերահռչակեալ – զոր և արևմտեայք՝ յաճախ լսելով առանց փոխարկելոյ իբրև յատուկ անուն գրեն 'ի թարգմանութիւնս պարգևագրաց և 'ի հրովարտակս՝ Պազիտոնիում, Pasidonium կամ Pacistonium, – մաքսելով յանդուլ երթևեկէ կարաւանաց ծովու և ցամաքի՝ յոգնաթիւ ազանց արևելից և արևմտից՝ ուղևորելոց 'ի Խամպալէքայ (Փէքին) Սինէացւոց մինչև 'ի Բիւզանդիոն Յունաց, և 'ի Հնդկաց՝ ցծովածոցս Միջերկրականի, բաւեաց յատին ունել զպետութիւնն՝ ստէպ բաղխեալ յեգիպտական բռնութենէն. և բազում անգամ վտանգեալ, նուաճեալ, քանդեալ և աւերեալ, անդրէն վերստին երկայնամիտ ճգամբ և երկամբք տերանցն բնկաց՝ վերականգնեալ և նորոգեալ, իբրև 'ի վերայ կենսապահիկ պարենի պետութեանն ոգորելով մինչև ցմահ. և ոչ տոհմային պետութեանն միայնոյ, այլ մարթ է ասել իրաւամբք, թէ և 'ի վերայ համաշխարհական օգտի վաճառականութեան, և մանաւանդ շահու զգօն պետութեանց արևմտից. զի խափանումն նորին՝ յոլովից խափանումն էր վաճառաշահութեանց, յորմէ և հարկ փոխելոյ և այլուր խնդրելոյ և բանալոյ զայնր ճանապարհ, որոյ՝ որպէս վերագոյն նշանակեցաք, ոսկեղէն իմն գլուխ անկեան և նախաակիզբն էր Այաս։

Զանուանս իջևանից կարևոր մասին միոյ ճանապարհին, այն է յԱյասայ ցԴաւրէժ՝ աւանդեաց մեզ փլորենտացին Բեկոլոդդի[2], երեսուն և չորս հանգոյցս կարաւանաց. բայց՝ աւա՜ղ է, զի ցարդ բազմաց աշխատ եղեալ՝ տակաւին ոչ զամենայնն յաջողեցան ստուգել իջևանաց տեղիս. այլ սակայն բաստ մեծ է մեզ՝ զի այդ ամենայն հանգրուանք 'ի մերում աշխարհիս են, 'ի փոքրն և 'ի Մեծ Հայս. իսկ 'ի բնիկ երկրիս Սիսուանայ՝ երկոքին սահմանածայրքն սորին միայն էին, Այաս և Կոպիտառ. աստի մինչև ցեօթներորդն՝ Salvastro, որ է Սեբաստիա, անստոյգ են հնգեքին անուանքն և տեղիք[3], այլ միայն յայտնի՝ զի ուղղակի ընդ հիւսիս հատանէր ճանապարհն՝ ցնշանակեալն Սեբաստիա, և անտի դառնայր ընդ արևելս, ընդ Երզնկա (Arzinga), ընդ Կարնոյ քաղաք (Arzerone), ընդ Բոլորապահակ (Polorbeech, կամուրջն Հոռոմի), ընդ Բագրևանդ (Alle tre Chiese), ընդ Պայէզիտ (Sotto l'Arca-Noe, 'ի ստորոտ լերին Նոյեան տապանի), և դարձեալ ընդ հարաւ արևելից՝ յանգէր 'ի շահաստանն Ատրպատականի 'ի Դաւրէժ։ Ծախք ճանապարհի առ մէն բեռնակիր գրաստ, ուղտ կամ էշ, յԱյասոյ ցԴաւրէժ՝ լինէր յայնժամ 209 թագուորին դրամ Հայոց, կամ համարժեայ սպիտակն (aspre) Դաւրիժու. 'ի բնիկ սահմանին Սիսուանայ, այսինքն յԱյասոյ ցԿոպիտառ՝ 41 թագուորին և $3\frac{1}{2}$ դենար կամ քարտէզ, որ է ըստ նիւթական արժէից դրամոյն՝ իբրև 20 ֆրանգ. և բովանդակն ցԴաւրէժ սակաւ աւելի քան զ100 ֆրանգ, այլ ըստ զօրութեան բազմօք առաւել թուի։ — Միւս ևս ճանապարհ վաճառուց էր յարևելից հարաւոյ երկրիս մերոյ, այն է յԱսորւոց կողմանէ, 'ի Հալպայ կամ յԱնտիոքայ, որոյ հարկ էր անցանել ընդ հռչակաւոր դրունս Ասորւոց և Կիլիկիոյ՝ ընդ Դռնակն (Portella) կոչեցեալ՝ 'ի հարստութեան մերայոցս, (որպէս տեսցի 'ի յետագայդ)։ Բաժտուն մի ևս կարևոր հաստատեալ էր անդ, կամ 'ի կապանն Սարուանդիքարի, և ընդ այն անցանէր զայր կարաւանն յԱյաս, կամ ընդ Մսիս[4] երթայր 'ի միւս ևս գերահռչակ Դուռն՝ Կուկլակայ կապանին, և ելանէր յերկիր սուլտանին Իկոնիոյ, երթալ 'ի կողմանս Պոնտոսի կամ Կ. Պօլսի։ Ի դարձին՝ կարաւանն Դաւրիժու բերէր անտուստ զվաճառս Պարսից և Հնդկաց, նա և զհեռաւոր Ճենաց. 'ի նմին ժամանակի և նաւք Եւրոպէացւոց զիւրեանց աշխարհաց աղխամաղխն թափէին 'ի մթերանոցս կամ 'ի բեռնաթափս Այասոյ, և կամ աստի անցուցանէին յայլ աշխարհս. և յանցսն՝ հարկէին պարարել զԲաժտուն նորին և զայլս որ արտաքոյ։ — Ի տարուբերելոյ աստի վաճառուց և 'ի գնածոց 'ի հրապարակին Այասոյ՝ անբաւ մթերք արծաթոյ և ոսկւոյ մտանէին 'ի գանձ արքունի. թէպէտ և ոչ ծանր էր բաժն[5], ըստ ազգի նիւթոցն՝ երկու կամ չորս առ հարիւր, 'ի մուտս և յելս վաճառելեաց, նա և ազ-

1 Extrahere fecimus de dictis nostris *Quaternis* de l'Ayacio, գրէ Լեւոն Դ առ դուքսն Վենետկոյ, վասն հաշուի բամբակի, զոր Վենետկեցիք առանք գնեալ էին յԵգիպտացւոց, 24,107 թագուորինաց, այլ վաճառողքն պահանջէին 27,000, և այսքան հատոյց Լեւոն։

2 BALDUCCI PEGOLOTTI, Pratica della Mercatura, Գլ. Զ։

3 Ըստ Բեկոլոդդեայ Gandon, Casena, Gavazera (կարաւանատուն) dell' Amiraglio, Gadue, Gavazera di Casa Yacomi, կարաւանատուն Եաքոմի տան վաճառականաց։

4 Էտրիսի աշխարհագիր՝ հանգոյցս կարաւանի ընդ Հալէպ և ընդ Այաս՝ նշանակէ զՀազարդ (Ազազ), Կուրիս, Անցք Ամանոսի ընդ կապան Սարուանդիքարի. Մսիս, յորմէ երթայր յԱտանա և 'ի Տարսոն։

5 Սուղ ինչ ստորև կարգեսցի ցուցակ մի մասնական բաժից և սակից, և նշանակող նոցին արքունի հրովարտակն Լեւոնի Բ։

սոյ. այլքն՝ աստի և անտի 'ի մերձակայ վաճառականաց և 'ի գիւղից քաղեցան։ Գինքն նշանակեալք են 'ի հայկական Բիզանդ սատակին, Նոր դրամ և Թագւորին, որոց բաղդատութիւն ընդ այժմու դրամոց (ֆրանգաց) տեսցի ընդ հուպ 'ի յետագայդ, որպէս և այլ ինչ ազգ դրամք յիշեալք սակաւ ուրեք 'ի ցուցակիդ և այլուր [1]։

Ցայտ է թէ ոչ միայն երթևեկք էին վաճառականաց յԱյաս, այլ և հաստատաբնակ վաճառականք օտարազգիք. մանաւանդ Իտալացիք, և 'ի սոսա յաւէտ Վենետկեցիք և Գենուացիք. և ոչ լոկ վաճառականք, այլ և արուեստաւորք և ձեռագործք. և գլխաւորք 'ի սոսա տաբաշագործքն կամ Ցփխագործք (հիւսողք այծէից Ciambellotti կոչեցելոց). կրպակաւորք և պանդոկապանք (Tabernarius), Գինեվաճառք, Հիւսունք (Magister asie),

[1] Գին եւ սակ նիւթոց եւ իրաց յԱյաս և 'ի Սիսուան, յամս 1274—1330.

| ԱՄ | ՆԻՒԹՔ | ԳԻՆ |
|---|---|---|
| 1279 | Կոճապղպեղ, Պեկէտի տեսակն, մի բուռն [1] | 26 Նոր դրամ |
| 1307 | Պղպեղ, 10 կենդինար [2] | 1799 Ն. դ. |
| » | Որդան-փայտ (Brazil), 510 բուռ և 7 ունկի | 2830 1/2 Բիզ. սպա. |
| 1279 | Բամբակ, մի բուռ | 9 Ն. դր. |
| 1298 | Նոյն [3] | 13 Ն. դր. |
| » | Ոսկեդիպակ (Samitti), մի փերթ | 800 Ն. դր. |
| 1279 | Ջուխայ կապոյտ, կանաչ, սեաւ, և այլն, 32 փերթ [4] | 1393 7/8 բիզ. սպա. |
| » | Ջուխայ Terlixani?, 3 փերթ | 500 Ն. դր. |
| 1307 | Կտաւ 30 կանգուն | 90 » |
| » | » 9 եղեգնաչափ | 36 » |
| » | Կտաւեայ Fraxeti զգեստք երեք | 45 » |
| » | Նոյն զգեստք երկուք պուխրամեայ | 40 » |
| » | Կերպաս ժապաւինեալ 12 կանգուն | 24 » |
| » | Պարեգօտ (Sclavina) քահանայի | 16 » |
| » | Բանճկան կանացի | 15 » |
| » | » բամբակեայ | 12 » |
| » | » կնպրացի | 20 » |
| » | Շապիկ բամբակեայ | 8 » |
| » | » կտաւի | 25 » |
| » | » ազնիւ | 30 » |
| » | Պատմուճան կամ վերնազգեստ | 50 » |
| » | Վերարկու կանացի | 50 » |
| » | Զգեստ քահանայի | 15 » |
| » | Զգեստ մանկան, ճամկաւոր | 20 » |
| » | Բանճկան տղայոյ մետաքսեայ | 6 » |
| » | » Նրբանիւթ (de Cendalo) | 20 » |
| » | Սաւան կամ Նմանի (Linteamina) | 8. 10 և 15 » |
| » | Ծածկոց կամ վերմակ կնպրացի | 40 » |
| » | Անձեռոցիկ | 1 » |
| » | Գդակ (Cerveleria) | 8 » |
| » | Ցփսեայ զգեստ (Ciambellatus) | 50 » |
| » | Կապայ ժապաւինեալ | 25 » |
| » | » Հասարակ | 16 » |
| » | Կօշիկք, զոյգ մի | 10 » |
| » | Քսակ մետաքսեայ ոսկեթել | 30 » |
| » | Պայուսակ | 8 » |
| » | Պարկ բամբակեայ | 1 1/2 և 2 » |
| » | Մահիճք (Materacium) | 8 » |
| » | Բարձք | 2. 8. 10. 15 » |
| » | Կապերտ | 10. 16 » |
| 1279 | 24 Մորթք գամշոյ | 860 » |
| 1307 | Կոնք պղնձի | 10 » |
| » | Կաստայ | 10 » |
| » | Պղտն | 10 » |
| » | Անօթ ջրոյ (Capellus) | 14 » |
| » | Անօթ մի ոսկեղէն | 200 » |
| » | Արծաթեայ խաչ | 20 » |
| » | » Դրգալ | 6 » |
| » | » Պատառաքաղ | 3 » |
| » | Մատանի ոսկի | 20. 25 » |
| » | » արծաթի | 4 » |
| » | Մանեակ ոսկի | 20 » |
| » | » արծաթի | 10. 6 » |
| » | Գլխանոց երկաթեայ | 20 » |
| » | Պայտարք երկաթի արկղ պայտից | 30 » |
| » | » գանակ կարելոյ զամբակ | 2 » |
| 1307 | Կառն պայտարի | 2 Նոր դրամ |
| » | 1700 բեւեռք » | 22 » |
| » | Ճրագ, 2 ունկի | 2 » |
| » | Ապուխտ, մի կտոր | 3 » |
| 1274 | Փայտ կաղնի (Robor) 25 պարզունակ | 442 » |
| » | Հեծանք 260. | 650 » |
| 1307 | Զէնք. Զրահ կտաւի-հիւսկէն | 30 » |
| » | » Լանջապանակ | 40 » |
| » | » Նետաձիգ դրկի (Baliste a pectora) | 100 » |
| » | » Նետաձիգ եղջերեայ | 25 » |
| » | » Աղեղն և կապարճ | 15 » |
| » | » Սուր (Spata) | 10 » |
| » | » Դանակ կամ Նրան | 20 » |
| » | » Տապար (Manere) | 2 » |
| » | » Լախտ (Maza) | 3 » |
| » | » Սլաքք 4000 (Piloni) | 461 » |
| » | » Նշանակ մի | 15 » |
| 1284 | Դարիթ (Նաւ) մի զոր գնեաց Լևոն Բ | 600 բիզ. |
| 1279 | Նաւ մի արքեպիսկոպոսին Տարսոնի | 221 բիզ. սպա. |
| » | » Քառորդ Նաւուն | 50 բիզ. |
| 1274 | » Երրորդ մասն Gamella Նաւու | 460 Ն. դր. |
| » | » Դ և Ը մասն Նաւու | 428 բիզ. |
| 1279 | Նաւողղեայ կենդինար մի բեռան | 8 » |
| 1274 | » 470 պարզունակ փայտի | 235 բիզ. եգիպտ. |
| 1335-40 | Գրաստաբեռն յԱյասայ ցԿոպիտառ | 41 1/2 թագւորին |
| » | » յԱյասայ ցԴամրէժ | 209 թագ. |
| 1332 | Վարձք Աւագայ կարաւանապետի, առ մի բեռն [5] | Սպակ մի (Ֆր. 0,50) |
| 1310 | Տուն մի գնեալ յԱյաս ('ի Պոյլէն) | 700 բիզ. |
| 1312 | » Այլ տուն | 1500 կամ 1700 Ն. դ. |
| 1307 | Վարձք մթերանոցի յԱյաս [6] | 30. 60. 77 1/2 Ն. դ. |
| 1274 | Վարձք երկամեայ մկրտեալ ծառայի [7] | 50 Ն. դր. և 25 բիզ. պարզև |
| 1279 | Օժիտ Ալիծայ (տ. յէջ 371) | 250 բիզ. |
| 1252 | Օժիտ Ֆիմէի դստեր Հեթմոյ Ա. | 100,000 բիզ. հայ. |
| 1215 | Օժիտ (մասն) Ռիթայ դստեր Ա Լեւոն թագաւորի | 30,000 բիզ. ոսկի |
| 1098 | Օժիտ Արտայ դստեր Ա Թորոսի (տ. յէջ 47). | 60,000 » » |
| 1279 | Հողագրամ Գենուացւոց յԱյաս | 20 Ն. դր. |
| 1310 | Ծախք Պայլին Վենետաց վասն ընդունելոյ Նոր պարգևագիր 'ի թագաւորէն Հայոց | 300 բիզ. |
| 1314 | Ընծայ Դքսին Վենետկոյ առ թագաւորն Հայոց | 12 Լիր. կրոս. (Ֆր. 1440) |
| 1316 | Ընծայ առ դեսպան թագաւորին 'ի Վենետիկ | 4 » » (Ֆր. 480) |
| 1329 | Ընծայ առ դեսպան թագաւորին 'ի Վենետիկ | 2 » » (Ֆր. 240) |
| 1316 | Ընծայ առ Օշին թագաւոր վասն հարսանեացն | 30 » » (Ֆր. 3600) |

[1] 40 բուռ կոճապղպեղի 'ի մի զամբիւղ ամփոփեալ յիշի։
[2] Տասն կենդինարն կշռէր 338 հազար-դրամ (ﺗﮑﻪ)։
[3] Միահաղոյն 486 բուռ գնեալ էր, 6323 1/2 Նոր դրամոց։
[4] Մէն փերթ 10 կանգուն երկայն էր, և թզաւ եղեգան լայն։
[5] Կոչէր սա խալամուչ ըստ Թաթարաց, այսինքն է Թարգման. թուի թէ 'ի Տրապիզոնէ առաջնորդէր կարաւանի վաճառականաց 'ի Դաւրէժ, և Վենետք տային նմա զստակն կամ զապիտակ (aspre)։
[6] Ըստ նշանակի չափ ժամանակին, այլ թուի տարեկան մի։
[7] Հանդերձ կերակրով։

Դարբինք, յորոց մի ոմն վենետկեցի քաանեհինգ ամս կեցեալ էր յԱյաս․ Ոստայնանկք (Filatori), Մորթեգործք կամ Խաղախք (Pelliparii), Նաւածեփք (Calafati), Դրամահատք յարքունի փողերանոցն, Դերձակք (Taliatori), յանուանէ յիշեալք յամի 1274 Մանգնդղա և Օպերդինոյ որդի Պետրոսի Նաւածեփի, Մայլորդք (Curlus) և Նաւաստիք։

Պատուականագոյն 'ի ձեռագործս եկացն օտարաց և ընկաց մերոց՝ էր Ցփսի, զոր և վաղագոյն նշանակեցաք 'ի բնագրութեանս (յէջ 31), ընդ նմին և ազգ ինչ ոսկեճամուկ մետաքսեայ դիպակի․ զի եթէ Ամբատ Թագաւոր 'ի Վենետկոյ գնէր դիպակս ոսկեթելս (յամի 1298) յընծայ սուլտանին, եղբայր նորա Օշին արքայ՝ յամին 1310՝ առաքէր ընծայ առ Դուքս Վենետկոյ դիպակս ոսկեթելս (Drapis ad aurum, կամ Drapis setæ, գրեալ 'ի դիւանս Վենետկոյ), 20 լիրայ կրոսից արժէիւք, որ ըստ Նիւթոյ դրամոցն լինի յայժմուս 2400 ֆր․), յայտ է թէ այլ ազգ էր դիպակն գնեալ և այլ յղեալն․ յայսմ ազգէ էր անշուշտ և առաքեալն յետոյ ուրեմն 'ի Կոստանդեայ Բ արքայէ առ Քահանայապետն՝ յամի 1346, զոր դեսպան նորին Թաքոյց 'ի Նաւին՝ յանցանելն ընդ Վենետիկ, և թէպէտ իրազեկ եղև պետութիւնն՝ այլ անտես արար (զմնաս մաքսին)[1]։

Գուշակի յասացելոցս՝ զի ոչ միայն բազում ազգաց լեզուք լսէին յԱյաս, այլ և խնամութիւնք և կենակցութիւնք լինէին Հայոց ընդ արևմտեայցդ․ որպէս յիշեցաք 'ի վեր անդր ընդ կարծ՝ զՖռանգ Տիկինն․ յայտնագոյն ևս է Այիծ կին Յանուինոյ տէ Տոմոյ (Januino de Domo) Գենուացւոյ, † յառաջին աւուրս ապրիլի 1279 ամի․ քանզի յիւն ամսոյն Այիծ գործակալ կարգելով զոմն 'ի պահանջել զպաշտօնական իւր՝ 250 բիզանդ հայ, վկայէ զի հայերէն գրեալ էր դաշնագիրն։ — Հայ թուի և գրեալն Astexana (Աշխէն? Աստեղանի?) կին Գուլիելմու ուրումն Լաւորապեն կոչեցելոյ (Gul. Lavoraben)[2]։

Ըղձալի էր ևս մեզ գիտել՝ թէ ըստ յաճախութեան նաւողացն յարևմտից՝ յԵւրոպիոյ՝ այսր յԱյաս, և մեկնելոյ աստուստ տորմըղաց նոցին, հերձանէի՞ն և նաւք հայադրօշք զայիս Միջերկրականին և զՊոնտոսի և զբացծաւալ տարածութիւնս ծովուն Հնդկաց․ կամ հանգոյն օտարազնեայցն բանելոց և օթելոց յԱյաս և 'ի Սիս և 'ի Մոփս, հաստատէի՞ն և մերազնեայքս չուեալք յափանց Սիսուանայ՝ յօտար եզերս արևմտից, մանաւանդ յերկոսին երկարաձիգ և 'ի գեղածիծաղ ափունս Իտալիոյ։ — Հաւանական յոյժ է յետինս․ քանզի և գրեաթէ անդստին 'ի կիսոյ ԺԳ դարու, յորում դեռ այն ինչ սկըսեալ էր արծարծանել չահաստանն Այասոյ, մինչև ցկէս ԺԴին, գտանեմք ոչ սակաւ հետս և յիշատակս հոգևտանց և եկեղեցեաց Հայոց, ոչ միայն 'ի ծովեզերեայսն՝ այլ և 'ի միջերկրեայ քաղաքս Իտալիոյ․ և զի մեծ մասն այնր ժամանակի՝ պարագայ ժրութեան և ճոխութեան էր Այասոյ, ոչ երկբայիմ թէ 'ի սակս վաճառաշահութեան գաղթեալ իցէ յոգունց 'ի մերայոցս՝ 'ի կողմանսն յայնոսիկ․ և վասն յաճախ բնակութեանն և երթևեկին, թերևս և խնամութեան պատճառաւ, հաստատեալ և ազգային եկեղեցիս և բնակարանս առընթեր, որ Հայ-տունք կամ Հոգետունք կոչին[3]։ Այլ ոչ է մարթ հաւաստել այսուիկ՝ թէ և սեփական հայեցի նաւուք հատեալ անցեալ իցեն ընդ ծով․ 'ի մթան մնայ տակաւին չափ նաւարկութեան Սիսուանեայց, որպէս և ծովամարտիկ զօրութեան նոցին․ աներկբայ իսկ զոլով երկոցուն ևս՝ պետութեանն և վաճառականաց Հայոց, ունել նաւս սեփականս և վարձեալս․ զոր հաստատեն և յիշատակքն ինչ՝ ակնարկեալք և 'ի գիրս յայս, փոքունց ծովամարտութեանց, և գնելոյ նաւս և թիս 'ի Վենետաց, և առա-

1 Certe pecce *Cembeletorum* et *Pannorum ad aurum*, quas portat (ambaxator) ad Dominum Papam, ex parte dicti Regis. — Libri Grat. XI.

2 Ոչ անհաճոյ համարիմ բանասիրաց յիշել զոմանս 'ի խնամութեանց ապագորերոյն Սիսուանայ ընդ օտարազգեաց, յաւէտ ընդ Փռանկաց, յորոց մարթ է գուշակել և զյաճախութիւն ազգախառնութեան հասարակ քաղաքացեաց և ռամկաց։

Արք Հայք, կանայք Փռանկք կամ օտարք․

Պարոն Լեւոն (Ա) . . = Ա․ կին, Մարիամ դուստր Սահակայ կոմսին․
Բ․ կին, Ա․ Ա․ դ․ Պալտինայ կոմսի Եդեսիոյ․
Ռուբէն Բ . . . . . . = Իզապել դ․ Հըմֆրեայ տեառն Քառաքոյ․
Լեւոն Ա Թագաւոր . . = Ա․ կին, Զապլուն Անտիոքացի․
Բ․ կին, Սիպիլ դ․ Ամաւրեայ Թագաւորի Կիպրոսի․
Լիկոս եղբայր Ա Հեթմոյ = Ակոց (Ագաթայ) դ․ . . . . .
Թորոս Թագաւոր . . = Մարգարիտ դ․ Հիւկոյ Թագաւորի Կիպրոսի․
Սմբատ Թագաւոր . . = Իզապել դ․ Կիոյ Իպլինեան, թոռն Մարեմայ եղբօր Ա․ Հեթմոյ․
Օշին Թագաւոր . . . = Բ․ կին, Յովհաննա դ․ Փիլիպպ․ Տարենտոյ, անուանեալ կայսեր Կ․ Պոլսի․
Լեւոն Գ . . . . . = Ագնէս կամ Մարիամ դ․ Ամաւրեայ տեառն Սուրայ և Զապլունի դ․ Բ Լեւոնի․
Լեւոն Դ . . . . . = Եղէոնորա կամ Կոստանդիա դ․ Փրետրիկի Թագաւորի Սիկիլիոյ․
Հեթում տէր Կոռիկ․ (Պատմիչն) = Զապել դ․ Կիոյ Իպլինեան և Մարեմայ քեռ Ա Հեթմոյ․
Հեթում մարաջախտ . = Ֆիմի դ․ Պալեանի տեառն Սիդոնի և թոռն Ֆիմեայ դ․ Ա Հեթմոյ․

Կանայք Հայք օտարազգի արանց․

Արտա դ․ Ա Թորոսի = Պաղտին Ա Թագաւոր Երուսաղեմի․
Ա․ Ա․ դուստր Պարոն Լեւոնի = Ճոսլին Ա կոմս Եդեսիոյ․
Տալիթա դ․ Ստեփանէի = Պերդրան տէր Ժիպլէի․
Փիլիպպինէ դ․ Բ Ռուբինի = Թէոդորոս Լասգարիս կայսր Նիկիոյ․
Ալիծ դ․ Բ Ռուբինի = Ըեմունդ ժառանգ Անտիոքայ․
Ռիդա դ․ Ա Լեւոնի = Յովհան Պրիեն Թագաւոր Երուսաղեմի․
Զապել դ․ Ա Լեւոնի = Ֆիլիպ ժառանգ Անտիոքայ․
Ստեփանիա (Եմիլիա) քոյր Ա Հեթմոյ = Ենրիկ Թագաւոր Կիպրոսի․
Մարիամ քոյր Ա Հեթմոյ = Յովհան Իպլինեան տէր Յոպպէի․
Սիպիլ դ․ Ա Հեթմոյ = Պեմունդ Զ բրինձ Անտիոքայ․
Մարիամ դ․ Ա Հեթմոյ = Կի Իպլինեան, սենեսկալ Կիպրոսի․
Ֆիմէ դ․ Ա Հեթմոյ = Յուլիան տէր Սիդոնի․
Զապլուն դ․ Բ Լեւոնի = Ամաւրի արքայեղբայր տէր Սիդոնի․
Րիթա դ․ Բ Լեւոնի = Միքայէլ Անդրոնիկ կայսր Կ․ Պոլսի․
Թեֆանոյ Թէոդորա դ․ Բ Լեւոնի = Խօսեցեալ Անգելոսի կոմսենեայ․
Ալիծ դ․ Հեթմոյ Լամբրոնի․ = Փիլիպպ․ Իպլին սենեսկալ Կիպրոսի․
Զապել դ․ Օշնի տեառն Սարուանդիքարի = Թորոս որդի Կիոյ Իպլինեան և Մարեմայ դստեր Ա Հեթմոյ․
Զապել դ․ Օշնի մարաջախտի = Պալեան Իպլինեան․
Ռեմի քոյր Բ Կոստանդնի = Պեմունդ տէր Կոռիկոսի ո․ Ճիւանի Լիւզինեան։

3 Հրատարակեալ էր մեր յայլում գրուածի զանուանս քաղաքաց Իտալիոյ՝ յորս յիշին Հոգետունք և եկեղեցիք Հայոց յ՚ԺԳ և ԺԴ

» Խելք շրԹանցն եղերաց՝ բերան և շուրԹն նաւին է.
» ըստ այնմ, Ցխուս ննջէր 'ի խելս նաւին. Պաղպաջունք
» բազմականացն՝ գեղեցկուԹիւնքն որ 'ի նաւին լինի.
» Տախտակամած՝ Արոռք և բազմականք, և կամ այլ
» ինչ ։ Վանդակապատ՝ որ 'ի մէջ նաւին միջնակ լինի
» ածած և բաժանած տուն 'ի տանէ [1] » ։ — Համարեցայց
հեռանալ՝ այլ ոչ խպառ օտարանալ յառաջարկուԹենէ
գործոյս, զայսպիսիս 'ի մէջ ածելով յիշատակս բանից և
բառից, զորս կարծեմ վարէին Հայ նաւաստիք Այասոյ,
և լսէին խռնեալքն 'ի հրապարակս, 'ի բեռնԹափս և 'ի
բեռնբարձս նորին՝ վաճառականք մեր և վաճառակիցք
չորեքծագեան երկրի ազանց. և առ 'ի չգոյէ կարևորագոյն
ևս գիտելեաց զնախնեացս մերոց նաւարկուԹենէ՝
ոչ անգոսնեսցին և դուզնաքեայքս ։

**141. ՀԱՄԵՄԱՏՈՒԹԻՒՆ ՉԱՓՈՒՑ, ԿՇՌՈՑ ԵՒ ԴՐԱՄՈՑ ՑԱՅԱՍ.** — Ցասացելոցս ցայսվայր՝ ծանուցաւ կարծեմ
ըստ բաւականին՝ քանի՛ մեծ և կարևոր կեդրոն էր
վաճառականուԹեան և շահաստան Հայոց՝ Այաս, 'ի կիսոյ ԺԳ դարու ցկէս ԺԴին. այլ առ հաւաստարմագոյն ևս
առնել զծանօԹուԹիւնս՝ արժան համարիմ կարգել առ
տեղեաւս զբովանդակ իսկ զաւանդեալն զայսմանէ՝ 'ի
Պալտուչչի Բեկողոդեայ, գործակալէ վաճառական ընկերուԹեանց Փլորենտիացւոց, յիւրումն Հրահանգի վաճառականուԹեան, 'ի գլուխ ԺԱ, և այն 'ի ժամանակի
(յամս 1336=40) յորում նուազեալ իսկ էր երԹևեկ վաճառականացն ընդ ծով և ընդ ցամաք, վասն ստէպ հարուածոց քաղաքին յԵգիպտացւոց անտի ։ Իբրև մի 'ի
ցանկալի յիշատակարանաց և վաւերական Այասոյ՝ աւանդեսցի և իտալական բնագիր հեղինակին, միանգամայն և առ քննուԹիւն և ստուգուԹիւն չափուց և կշռոց
այլևայլ քաղաքաց, ընդ որս վաճառակցէին Հայք ։ Ի
վերջ Թարգմանութեանս կարգեմ և զցուցակ համեմատուԹեան կշռոց և չափուց Այասոյ ընդ այժմու տասնորդական չափուց, է որ ըստ քննուԹեան այլոց և է որ
բաղդատուԹեամբ վենետկեան չափուց յիշելոց 'ի Բեկոլոդեայ ։ Անշուշտ նոյն չափք էին ընդ բնաւ Սիսուան ։

## ՀԱՅԱՍՏԱՆ

« Հայաստան՝ ինքն առանձինն ('ի տուրևառս), այսինքն
Այաս Հայոց, ուր հզօրագոյն տուրևառ է վաճառականուԹեան, քանզի 'ի ծովեզերի կայ, և անդանօր բնակեն հանապազ տեղակաց վաճառականք ։

Պղպեղ և Կոճապղպեղ և Շաքար, և Դարիճենիկ և
Խունկ և Որդան-փայտ (Verzino), և Կնքախէժ (Լայքա)
և Բամբակ, և ամենայն խոշոր ախտրիք, և Երկաթ և
Պղինձ և Անագ. այս ամենայն վաճառի 'ի Հայս Րոտլիւ.
և է րոտլն 15 վաքիայ, և 33 րոտլն առնէ Կճնդինար մի
Հայոց ։

Մետաքս և ամենայն նուրբ Համեմունք (և նիւԹք) վաճառին անդ վաքիայիւ, ¹/₁₂ րոտլի վաքիայիւ, որ և կոչի
վաքիայ հրապարակի (վաճառականաց) ։

Ոսկի՝ վաճառի դրամակշռով, և 50 կշիռք առնեն
Մարկ մի Հայոց ։

Արծաթ վաճառի մարկիւ, որ է 50 դրամակշիռ ։

ՄորԹք վաճառին կշռով մարկի. և 40 կշիռք տուեալ
լինին առ մէն մեծ տարածաչափ (ara) մորԹոց ։

Ամենայն Կտաւեղէնք և կանեփեղէնք վաճառին հարիւր եղեգնաչափիւ, և գնով այսքան բիզանդից և դենարից, համարելով 10 Թագաւորին առ բիզանդ ։

## ERMENIA.

*Ermenia per se medesimo, cioè in Lajazzo d'Ermenia, ove si fa il forzo della mercatanzia, perchè ene alla marina, ed ivi dimorano del continovo i resedenti mercatanti.*

Pepe, e gengiovo, e zucchero, e cannella, e incenso, e verzino, e lacca, e cotone, e tutte spezierie grosse, e ferro, e rame, e stagno, tutte si vendono in Ermenia a Ruotoli d' Occhia 15 per uno ruotolo, e di ruotoli 33 per uno Catars d' Erminia.

Sete, e tutte spezie sottile vi si vendono a occhia di occhie 12 per uno ruotolo, e chiamasi Occhia della piazza.

Oro si vende a Pesi, che gli 50 pesi fanno 1 Mars d' Erminia.

Argento si vende a mars, ch' è 50 pesi.

Pelle si vendono a peso del marchio, e dassi 40 de' detti pesi per una ara grande di pelle.

Tele line, e canovacci si vendono a centinajo di Canne, e a pregio di tanti Bisanti e Denari, 10 Taccolini per bisante.

1 Նոյն և 'ի մեկնուԹեան ԼԲ Բանին. « Քեղիքն՝ այն Ջոյգն՝ որ » յառաջաստին գլուխն է, և կամ Սէ-Ներ նաւին » ։ — Երկարագոյն ևս մեկնարանէ այլ ոմն 'ի քարոզական բանի. « Որք կազմեն » նաւ՝ 'ի չոր և 'ի ԹեԹև փայտէ, և լինի 'ի մէջն Գերան և Աբ- » ժան ... որ լցեալ է հողմով ... Յորժամ կամին կանգնեցնել զնաւն՝ » ձգեն խարիսխ երկաԹի յամենայն կողմանց և հաստատեն .... » Յորժամ կամին հասանել 'ի նաւահանգիստն և ոչ կարեն, յայն- » ժամ ձգեն զխարիսխն 'ի ցամաք և ձգեն յայս. և այպա կալով 'ի » նաւին՝ քարշեն զչուան խարսխին յինքեանս, և այնպէս ինքեանք » և նաւն հասանեն 'ի յեզրն ։ ... Որք ընտրեն զնաւս՝ Թէ որն է » ամուր և հաստատ, յառաջին հային 'ի գերան արժանին՝ որ 'ի » մէջ նաւին է, Թէ հաստատ է և ամուր, և չէ ճեղք կամ կոտրած .... » զի ամենայն պատրաստուԹիւն և լարանք նաւին՝ է 'ի գերանն յայն..։ » Ջինաւորք որք երկնչին յաւազակաց՝ շինեն չորքանկիւնի Բերդ 'ի » յետ կոյս նաւին, և նստի ղեկավարն անդ. զի Թէ յառաջ կոյս » նստի՝ ոչ կարէ ուղղել զնաւն. և երկու Բեռ-նաւին 'ի ձեռին ելրուռմ » յաջ և յահեակ. և յորժամ ձախ նաւն՝ զմին Թէն յինքն քարշէ և » զմիւսն 'ի բաց մղէ յինքենէ, և այնպէս ուղղէ զնաւն » ։

Կարևոր ևս են բանք Աւագերէց Սիսնեաց եպիսկոպոսի՝ 'ի մեկնուԹեան Սահմանաց գրոց, զի յիշէ և զանուանս նաւուց. « Ողնափայտն » նաւին այն ներքին բուն գերանն է՝ խիստ հաստ, որպէս ողնաշարն » մարդոյն և ամենայն կենդանեաց, որ զամենայն 'ի վերայ նորա շա- » րեն և հաստատեն. իսկ Քեղչն՝ որպէս պաւղոտիկ Քարշը ֆերանն է » 'ի ցից՝ 'ի մէջ նաւին, որ առաջանի կտաւն 'ի վերայ է, որ զքամին » զողանայ ։ Այծէծոյեան՝ Բերդանաւն է, որ խիստ մեծ է, և երեք » տապաղայ տներն 'ի վերայ իրերաց շինեալ, ներքնատուն և միջնա- » տուն և վերնատուն ։ Իսկ Ճըռքոյեւ՝ փոքր նաւն է, որ երկու դէմն » որպէս ճրագ պաւուաւոր (?) է » ։ Բերդանաւն համանիշ է Galea և Galeone կոչեցելոց մեծամեծ նաւուց ժամանակին, զոր ՀեԹում պատմիչ և այլք Խոլե գրեն. իսկ երեքկարգեան տներն՝ զայժմեան համակարգ պատերազմիկ նաւս կերպարանեն, քան Թէ զեռաԹի նաւս, Trireme.

Աճառ և Ասր և Ցփսի վաճառին վաքիայիւ $^1/_{15}$ րոտլի:

Արմտիք վաճառին յԱյաս Հայոց 'ի Մոդ և 'ի Մարզպանն, իմա յոգնահամար, և 'ի մոդ և 'ի մարզպան փոքր. և մարզպանն է $^1/_{10}$ մոդոյ:

Մետաքս Կարմրոյ վաճառի վաքիայիւ, որոյ կշիռ է 110 տրամ:

Քրքում վաճառի վաքիայիւ, որոյ կշիռ է 112 տրամ:

Ձէթ վաճառի տակառիւ՝ որպէս և էն:

Բիզանդն Հռոմոց հաշուի 10 Թագուորին արծաթոյ, և Թագուորինն արժէ 10 Դենար (քարտէզ) Հայոց, և դենարն 4 փողեր:

*Որչափ ինչ տայ փողերանոցն Հայոց առ մարկ մի արծաթոյ՝ որ դիցի անդ.*

Առ (մարկ) Սարդենիոյ? Թագուորին 114 և դենար 1:

Առ ափսեակ (piatta) վենետկեան կնքածով՝ 113 Թագուորին և 1 դենար:

Առ կշռախառնուրդ (lega) Տուրոնեան կրոսից՝ 111 Թագուորին:

Առ կշռախառնուրդ Շուշանեայց՝ 110 Թագուորին և 5 դենար:

Առ պրաչչիալ՝ այսինքն պուէնմինի՝ 109 Թագուորին և 2 դենար[1]:

Առ ստեռլին՝ 109 Թագուորին և 5 դենար:

Առ ձոյլ կնքով Գենուայ՝ 109 Թագուորին և. 5 դենար:

Առ ձոյլ կնքով Վենետկոյ՝ 109 Թագուորին և 5 դենար:

Առ Ռաոնեանս[2] արծաթոյ Սիկիլիոյ՝ 109 Թագուորին և 5 դենար:

Փողերանոցն (Հայոց) հատանէ դրամ մի արծաթոյ՝ որ կոչի Թագուորին (թագգոլինի), որոյ կշռախառնուրդ է 8 ունկի արծաթոյ զտոյ առ մէն լիպրա. և յելանելն 'ի փողերանոցէն՝ համարին 'ի հաշուի առ մարկ մի 91 Թագուորինք:

*Իրաւունք (բաժ) վաճառուց հատուցեալք 'ի Հայս.*

Գենուացիք և վենետկեցիք ազատք են, նոյնպէս և Սիկիլիացիք, որք ոչ ինչ հատուցանեն՝ ոչ 'ի բերելն և ոչ 'ի հանելն, բայց 'ի մարկէն՝ որ կշռիցի, և հատուցանեն մի առ հարիւր վասն կշռոյն:

Ընկերութիւնն Պարտի (վաճառականաց) ազատ է. ոչ ինչ հատուցանէ 'ի բովանդակ Թագաւորութեան Հայոց, ոչ 'ի մտանն և ոչ յելսն, առանց բանի և գրաւման: Փլորենտիացի կամ այլ մարդ՝ յորմէ և լեզուէ (քաղաքէ) իցէ, ոչ կարէ և ոչ պարտի կրել հակառակութիւն՝ ոչ յինչս և ոչ յանձինս այնր ընկերութեան, բայց եթէ վասն իւր իսկ բանի կամ յանցանաց ընկերութեանն այնորիկ: Նա առ այս ունին պարգևագիր, յորմէ կախեալ է ոսկի սիկղ կնքոյ Թագաւորին Հայոց, տուեալ 'ի Հայս[3], 'ի տասնե-

Sapone, e lana, e ciambellotti si vendono a ruotoli d' occhie 15 per uno ruotolo.

Biado si vende all' Ajazzo in Erminia a Moggio, e a Marzapanni, cioè in grosso, e a moggio a minuto a marzapanni, e gli 10 marzapanni fanno 1 moggio.

Seta chermisi si vende a occhia ch' è pesi 110 di diremo.

Zafferano si vende a occhia ch' è pesi 112 di diremo.

Olio si vende a botte tale come ella ene.

Il bisante di Romania si conta 10 Taccolini d'argento, e il taccolino vale Denari 10 d' Erminia, e il denaro vale 4 Folleri.

*Quello, che la Zecca d' Erminia da dello Mars dell' argento a chi il mette nella detta Zecca.*

Di Sardesco..... taccolini 114, denari 1.

Di piatte della bolla di Vinegia taccol. 113 e denari 1.

A lega di Tornesi grossi taccolini 111.

A lega di Gigliati taccolini 110 e denari 5.

Di Bracciali, cioè Buenmini taccolini 109 e den. 2.

Di Sterlini taccolini 109, denari 5.

Di verghe della bolle di Genova, taccolini 109, den. 5.

Di verghe della bolla di Vinegia, tacc. 109, denari 5.

Di Raonesi d' argento di Cicilia taccolini 109, den. 5.

Batte la detta Zecca una moneta d' argento, che si chiama taccolini, che sono di lega d' once 8 di argento fine per libbra, e vannone per marchio come escono della Zecca 91 de' detti taccolini a conto.

*Diritto di mercanzia, che si paga in Erminia.*

Genovesi, e Viniziani sono franchi, e Ciciliani, che non pagano niente, nè traendo, nè uscendo salvo di Mars, che si pesasse, pagano uno per cento di pesaggio.

La Compagnia de' Bardi è franca, che non pagano niente per tutto lo reame d' Erminia nè traendo, nè uscendo, per nulla detta, nè rappresaglia, che Fiorentini, od altre gente di che lingua si fussino non puote, nè dee essere detto niente nè in avere, nè in persona della detta compagnia, se non fusse per propria detta, o per proprio misfatto della detta compagnia. E di ciò hanno privilegio con suggello d' oro pendente del suggello del Re d' Erminia dato in Erminia a dì 10 del mese di

1 Այլուր գրէ Braccali և Ruenmini, և ցուցանէ լինել դրամ Ալէմանիոյ, ունելով Պսակ 'ի միում կողման, 'ի միւսում Ախուծ երկագլի:
2 Եղծ անուն Արագոնիոյ, զի Արագոնացի Թագաւորք Սիկիլիոյ հատին զայն դրամ. կոչէր և Pierreale կամ Periale, իբրու Imperiale (Կայսերական):
3 Ցարդ ոչ յայտնեցաւ ոչ բնագիր և ոչ օրինակ պարգևագրին:

բորդում աւուր ամսեան յանուարի՝ յամի Մարդեղութեան Փրկչին 1335 (ըստ մեզ 1336)։ Զայս ազատագրութիւն ընկերութեանն հնարեցաւ ընդունել Ֆրանկիսկոս Պալտուչչի, գոլով յայնմ ժամանակի 'ի Կիպրոս 'ի սպասու ընկերութեանն այնորիկ։

Պիզացիք վճարեն 2 առ հարիւր՝ 'ի մուտս և 2 յելս ըստ արժէից վաճառուցն. — Բերուցցի Ընկերութիւն Փլորենտիոյ, Կաղալանք, և Պրովենցալք՝ վճարեն 2 առ հարիւր 'ի մուծանելն և 2 առ հարիւր 'ի հանելն։

Այլ ամենայն ազինք վճարեն 4 առ հարիւր 'ի մտանելն և յելանելն։

Gennajo, anno della natività del nostro Signore Gesù Cristo 1335; la quale franchigia per la detta Compagnia, la procacciò Francesco Balducci essendo nel detto tempo a Cipri per la detta Compagnia.

Pisani pagano 2 per cento entrando, e 2 per cento uscendo di ciò che vale la mercatanzia.

La Compagnia de' Peruzzi di Firenze, e Catalani, e Provenziali pagano 2 per cento traendo, e 2 per cento uscendo.

E tutte altre maniere di gente pagano 4 per cento entrando, e 4 per cento uscendo.

### *Համեմատութիւն Կշռոց և Չափուց Հայոց ընդ այլոց աշխարհաց, եւ ընդ քնիկ Հայոց. եւ նախ ընդ Վենետկոյ.*

### *Come i Pesi, e le Misure d'Erminia tornano in diverse terre, e quelle con Erminia, e primieramente con Vinegia.*

Մի րոտլ ախայխիրաց Հայոց՝ փոխի 'ի 20 փոքր լիտրայ, 3 ունկի և $^1/_4$ Վենետկոյ։ — 49 րոտլ բամբակի Հայոց լինի 'ի Վենետիկ 9 լիտրայ Նուրբ[1]։ — Վաքիա մի մետաքսի և Նուրբ ախայխիրաց Հայոց՝ լինի 1 լիտրա և 4 ունկի Նուրբ Վենետկոյ։ — Խոշոր հազար-չափն (migliajo) Վենետկոյ՝ լինի 'ի Հայս 76 կամ 78 րոտլ, և կամ 20 $^1/_2$ կենդինար Հայոց։ — 100 մարկ արծաթոյ Վենետկոյ՝ լինի 'ի Հայս 106 $^1/_2$ մարկ։ — Կանգունք 315 կտաւուց վենետկեան չափով՝ լինին 100 եղեգնաչափ Հայոց։ — 11 Նուրբ լիտրայք Վենետկոյ՝ լինին յԱյաս Հայոց՝ 10 լիտրայք։

Ծախք վաճառուց 'ի բերելն 'ի Վենետկոյ 'ի Հայս և 'ի Հայոց 'ի Վենետիկ, հասարակաց Նաւավարձու՝ սահմանելոյ վասն Վենետկեան հասարակութեան 'ի բերդանաւս զինեալս, ծանուսցին 'ի ստորև և Նշանակեսցին 'ի պատճէն մի թղթոյ[2]։ — Խոշոր կտաւք և քթանք առ հակ մի՝ 350 խոշոր կշռոց Վենետկոյ՝ պահանջեն վարձս 6 սոլ արծաթի կրոսից Վենետկոյ։ — Ասուեայք և կտաւք Նուրբք՝ 6 սոլ արծաթեայ կրոսի՝ առ մէն հակ 260 լիտրայ խոշոր կշռոց Վենետկոյ։ — Պղինձ և անագ և երկաթ՝ 6 սոլ արծաթի կրոսի առ խոշոր հազար-չափ Վենետկոյ։ — Արծաթք հատեալք (կամ կտորք) 1 առ հարիւր։ — Ոսկի հիւսած, արծաթ հիւսած, և այլ սոցին նմանք՝ մէն արկեղ 3 առ հարիւր։ — Ամենայն ախայխիր՝ 13 սոլ արծաթ կրոսի՝ առ փոքր հազար-չափ։ — Բամբակ՝ 13 սոլ արծաթ կրոսի առ հազար-չափ փոքր։ — Ցփսիք 2 առ հարիւր 'ի զինեալ բերդանաւս, յանզէն նաւս 1 $^1/_2$ առ հարիւր։ — Շաքար՝ 10 սոլտի կրոսից առ հազար-չափ փոքր։

Ruotoli 1 di spezierie d'Erminia torna in Vinegia libbre 20, e once 3 e $^1/_4$ sottili. — Ruotoli 49 di Cotone d'Erminia tornano in Vinegia libbre 9 sottili. — Occhia 1 di Seta, e di spezierie sottile d'Erminia torna in Vinegia libbre 1 e once 4 sottili. — Il migliaio grosso di Vinegia torna in Erminia ruotoli 76 in 78 o vuogli Catars 20 $^1/_2$ d'Erminia. — Mars cento dars al peso di Vinegia fa in Erminia mars 106 $^1/_2$. — Braccia 315 di tele line alla misura di Vinegia, torna in Erminia Canne 100. — Libbre 11 sottile di Vinegia tornano all'Ajazzo d'Erminia libbre 10. — Costano le mercatanzie a conducere da Vinegia in Erminia, e d'Armenia a Vinegia per nolo di Comune ordinato per lo comune di Vinegia in Galee armate, come dirà qui a piede, e diviserà inanzi a una carta. — Tele grosse, e Canovacci per soldi 6 di grossi dars di Vinegia alla balla, a peso 350 al peso grosso di Vinegia. — Panni lani sottili, panni lini sottili soldi 6 di grossi dars la balla di peso libbre 260 al peso grosso di Vinegia. — Rame, e stagno, e ferro soldi 6 di grossi dars il migliajo grosso di Vinegia. — Argenti in pezzi 1 per cento. — Oro filato, Argento filato, e altre simile cose dee avere di casse 3 per cento. — Tutte spezierie soldi 13 di grossi dars del migliajo sottile. — Cotone soldi 13 di grossi dars del migliajo sottile.

Ciambellotti 2 per cento in Galee armate, in legno disarmato 1 $^1/_2$ per cento.

Zucchero soldi 10 di grossi dars del migliajo sottile.

### *Հայաստան ընդ Գենուայ.*

### *Con Genova.*

Րոտլ մի ախայխիրաց կշռով Հայոց՝ լինի 20 լիտրայ 'ի Գենուա։ — 5 լիտրայք արծաթոյ՝ կշռով Գենուայ՝ լինին 7 մարկք Հայոց։ — 7 $^1/_2$ րոտլ Հայոց՝ լինի կենդինար մի Գենուայ։

Ruotoli 1 di spezieria al peso d'Erminia, torna in Genova libbre 20. — Libbre 5 d'argento al peso di Genova, fae in Erminia mars 7. — Ruotoli 7 $^1/_2$ d'Erminia fanno in Genova Catars 1.

1 Ցայտնապէս սխալ է թիւն կամ րոտլից կամ լիտրայից։

2 Բայց 'ի հետեւեալ բանիցդ՝ չէք այլ ցուցակ այսպիսեաց։

### Ընդ Նիմիսայ և Մոնբելիերի.

20 ռոտլ Այասայ Հայոց՝ լինին 'ի Նիմիս և 'ի Մոնբելիէր՝ 72 բեռն և 6 ռոտլ։ — 8 վաքիա Այասայ լինին 'ի Նիմիս և 'ի Մոնբելիէր՝ 1 կենդինար։ — Մարկ մի արծաթոյ կշռով Նիմիսայ և Մոնբելիէրի՝ լինին յԱյաս 1 մարկ և 3 ստեռլին։ — Ռոտլ մի Այասոյ՝ լինի 'ի Նիմիս 15 լիպրայ խոշոր։ — Վաքիա մի խոշոր Այասոյ՝ որով վաճառին նուրբ ախայխիրք՝ լինի 'ի Նիմիս 1 լիպրայ և 3 ունկի նուրբ։ — Փոքր վաքիա մի Այասոյ՝ որով վաճառի մետաքս՝ լինի 1 լիպրայ խոշոր Նիմիսայ։ — Դրամանկշիռք 55 Այասոյ՝ որով վաճառին մարգարիտք՝ լինին 'ի Նիմիս մարկ մի։

### *Con Nimissi, e con Monpolieri.*

Ruotoli 20 di Lajazzo d'Erminia fanno in Nimissi e in Monpolieri cariche 72, e Ruotoli 6. — Occhie 8 di Lajazzo fanno in Nimissi e in Monpolieri Catars uno. — Mars uno d'argento al peso di Nimissi e di Monpolieri torna in Lajazzo mars uno e Ster. 3. — Ruotoli 1 di Lajazzo, torna in Nimissi libbre 15 grosse. — Occhie una di Lajazzo grosse a chi si vende spezierie sottili, fae in Nimissi libbre una, e once 3 sottili di Nimissi. — Occhie una di Lajazzo sottile, a che si vende seta torna in Nimissi libbre una grossa. — Pesi 55 di Lajazzo a chi si vende le perelle fanno in Nimissi mars uno.

### Ընդ Մայոլիկայ.

21 ռոտլ Հայոց՝ միով քառորդաւ պակաս, լինի բեռն մի Մայոլիկայ։ — Մարկ մի արծաթոյ կշռով Մայոլիկայ՝ լինի յԱյաս 1 մարկ և 3 ստեռլին։

### *Con Majolica.*

Ruotoli 21 meno un quarto d'Erminia, fae in Majolica carica una. — Mars 1 dars al peso di Majolica torna in Lajazzo mars 1 e Starlini 3.

### Հայաստան ընդ Սիւիլիոյ Սպանիոյ.

9 ռոտլ և քառորդ մի Հայոց ախայխիրաց՝ լինի 'ի Սիւիլիա կենդինար մի։ — Կայֆ (Cafisso) [1] մի արմտեաց չափով Սիւիլիոյ՝ լինի յԱյաս Հայոց՝ 3 մոդ և 8 մարզպան. և 10 մարզպանք են մոդ մի Հայոց։

### *Erminia con Sibilia di Spagna.*

Ruotoli 9 e un quarto d'Erminia di spezierie fanno a Sibilia catars uno. — Cafisso uno di biado alla misura di Sibilia fae a Lajazzo di Erminia moggia 3, e marzapani 8. E i 10 marzapani per uno moggio d'Erminia.

### Ընդ Պրուճիայ (Պրիւժ) Ֆիանդրայ.

Ռոտլ մի Հայոց ախայխիրաց՝ լինի 'ի Պրուճիա 14 լիպրայ։ — Մարկ մի արծաթոյ կշռով Պրուճիայ՝ լինի յԱյաս Հայոց՝ 6 ունկի և 13 ստեռլին։

### *Con Bruggia di Fiandra.*

Ruotoli uno d'Erminia di spezieria fae in Bruggia lib. 14. — Marchi uno d'argento al peso di Bruggia fae a Lajazzo in Erminia once 6 e Ster. 13.

### Ընդ Լոնտրայ Անգղիոյ.

8 ռոտլ Հայոց՝ որով վաճառին ախայխիրք, լինին 'ի Լոնտրա կենդինար մի, որ է 104 լիպրայ Լոնտրայ։ — Հարիւր-չափն Անագի որով վաճառի 'ի Լոնտրա՝ և է 112 լիպրայ, լինի յԱյաս Հայոց՝ 9 ռոտլ և $^{2}/_{3}$ ռոտլի։

### *Con Londra d'Inghilterra.*

Ruotoli 8 d'Erminia fanno a Londra una centina, che si vende la spezieria, che è libbre 104 di Londra. — Il centinajo dello stagno a che si vende lo stagno in Londra che è libbre 112 di Londra, fae in Lajazzo d'Erminia Ruotoli 9 e due terzi di Ruotolo.

### Ընդ Պուլիոյ.

Ռոտլ մի ախայխիրաց Հայոց՝ լինի 'ի Պուլիա 17 լիպրայ և 1 $^{1}/_{2}$ ունկի։ — 100 գրիւ (Salma) ցորենոյ Պուլիոյ՝ լինի յԱյաս 188 մոդ։ — Մարկ մի արծաթոյ կշռով Պուլիոյ՝ լինի յԱյաս 1 մարկ և 7 ստեռլին։

### *Con Puglia.*

Ruotoli 1 di spezieria d'Erminia, fae in Puglia libbre 17 e once 1 e mezzo. — Salme cento di formento di Puglia fanno in Lajazzo moggia 188. — Mars 1 d'argento al peso di Puglia fae in Lajazzo d'Erminia mars 1 e starlini 7.

### Ընդ Մեսսինայ Սիկիլիոյ.

Ռոտլ մի ախայխիրաց կշռով Հայոց՝ լինի 'ի Մեսսինա և 'ի Պալերմոյ և ընդ բովանդակ Սիկիլիա՝ 7 ռոտլ, 1 լիպրայ և 1 ունկի. և 12 ունկիք առնեն մի լիպրայ. 2 $^{1}/_{2}$ լի-

### *Con Messina di Cicilia.*

Ruotoli 1 di spezieria al peso d'Erminia, fae in Messina, e in Palermo, e per tutta Cicilia Ruotoli 7 e libbre 1 e once 1 d'once 12 per una libra, e di libbre 2 e

[1] Չափ արաբացի, 1/8 քառոյ, որ ըստ տամնորդական չափուց կշռէ 33 լիտր. կէսն կոչէր Քոռուլ, իսկ կրկնակն՝ Արտապա։

պլայք առնեն րոտլ մի հասարակ Սիկիլիոյ։ — Մարկ մի արծաթոյ կշռով Մեսսինայ՝ լինի յԱյաս Հայոց՝ 1 մարկ և 7 ստեռլին։ — 100 գրիւ հասարակ չափով Սիկիլիոյ՝ առնեն յԱյաս Հայոց՝ 198 մոդ։

Հայաստան ընդ Սերաստիոյ Թուրքաց.

75 րոտլ Այասոյ լինի 'ի Սերաստիա 100 րոտլ։ — Մարկ մի արծաթոյ կշռով Այասոյ՝ լինի 'ի Սերաստիա...։ — 100 գրիւ (Salme) ցորենոյ չափով Սերաստիոյ՝ լինի յԱյաս...։

Ընդ Վաճառասենեկի Կրետեայ...։
Ընդ Տօնավաճառս Շամբանեայ Փռանկաց...։
Ընդ Լոնտրայ Անգղիոյ [1]։

Դաւրէժ ընդ Այասոյ Հայոց [2].

100 Մնաս ախայխիրաց Դաւրիժու՝ առնեն յԱյաս 15 րոտլ։ — Մնաս մի մետաքսի Դաւրիժու առնէ յԱյաս 3 $^{3}/_{4}$ ունկի վաքիայ, որ $^{1}/_{12}$ մասն է րոտլի Այասոյ։ — Մարկ մի արծաթոյ կշռով Այասոյ՝ լինի 'ի Դաւրէժ 52 փորձակշիռ (Saggi)։

Աքքեա ընդ Այասոյ [3].

5 Մոդք ցորենոյ կշռով Այասոյ՝ առնեն յԱքքեա 3 մոդ։ — Կենդինար մի Աքքեայ՝ առնէ յԱյաս 37 րոտլ ախայխիրաց։

Ֆամակոստա Կիպրոսի ընդ Այասոյ [4].

Կենդինար մի Ֆամակոստայ առնէ յԱյաս 37 րոտլ։ — Մարկ մի արծաթոյ կշռով Ֆամակոստայ՝ լինի յԱյաս մարկ մի։ — Կայթք (Cafissi) 3 և $^{1}/_{3}$ արմտեաց՝ չափով Կիպրոսի՝ լինին յԱյաս մարզպան մի. և 10 մարզպան է մոդ մի Այասոյ »։

mezzo per uno ruotolo generale di Cicilia. — Marz 1 d'argento al peso di Messina, fae in Lajazzo d'Erminia mars 1, starlini 7. — Salme cento alla misura generale di Cicilia fanno in Lajazzo d'Erminia moggia 198.

*Erminia con Salvastro di Turchia.*

Ruotoli 75 di Lajazzo fanno a Salvastro Ruotoli cento. — Mars 1 d'argento al peso di Lajazzo fae a Salvastro... — Salme cento di formento alla misura di Salvastro fanno a Lajazzo...

*Colla Camera di Creti.*
*Colle Fiere di Campagna di Francia.*
*Con Londra d'Inghilterra.*

*Torisi coll'Ajazzo d' Erminia.*

Mene cento di Spezierie di Torisi fanno in Lajazzo Ruotoli 15. — Mene uno di Seta di Torisi fae in Lajazzo once 3 $^{3}/_{4}$ d'occhia, e d'occhie 12 per uno Ruotolo di Lajazzo. — Marchi uno d'ariento al peso di Lajazzo fae in Torisi saggi 52.

*Acri con Lajazzo d' Erminia.*

Moggia 5 di formento alla misura di Lajazzo fanno in Acri moggia 3. — Cantaro uno d'Acri fae in Lajazzo di spezeria ruotoli 37.

*Famagosta con Lajazzo d' Erminia.*

Cantaro uno di Famagosta fae a Lajazzo ruotoli 37. — Mar. 1 d'argento al peso di Famagosta fae in Lajazzo mar. 1. — Cafissi 3 e un terzo di biado alla misura di Cipri fanno in Lajazzo uno marzapane, di 10 marzapani per un moggio di Lajazzo.

---

ՑՈՒՑԱԿ ԿՇՌՈՑ ԵՒ ՉԱՓՈՑ ԱՅԱՍՈՅ ԸՍՏ ԱՅԺՄՈՒՍ·

| | | |
|---|---|---|
| Ունկի կամ Նուկի [5] . . . . . . . | Գրամ | 25,102 |
| Տրամ $^{1}/_{10}$ ունկւոյ . . . . . . . | » | 2,510 |
| Դանկ $^{1}/_{4}$ տրամի . . . . . . . | » | 0,627 |
| Կոււռ $^{1}/_{4}$ դանկի . . . . . . . | » | 0,156 |
| Գարեհատ $^{1}/_{4}$ կոռոյ . . . . . . . | » | 0,039 |
| Տրամ $^{1}/_{110}$ վաքիայի . . . . . . . | » | 3,651 |
| Լիտր կամ լիպրայ [6] . . . . . . . | » | 331,356 |
| Վաքիա (հօխայ) կամ ունկի մեծ $^{1}/_{12}$ առ րոտլ | | 527,910 |
| Վաքիա փոքր $^{1}/_{15}$ առ րոտլ . . . . . | » | 422,333 |
| Րոտլ կամ Ըռիտլ փոքր (կամ Նուրբ) Կշիռ (Հազարգրամ) | | 4,820 |
| » » » մեծ (կամ խոշոր)=15 վաքիա | | 6,335 |
| Կենդինար = 33 րոտլ մեծ . » | » | 209,055 |

| | | |
|---|---|---|
| Մարկ արծաթոյ (50 դրամակշիռ) (marc) | Գրամ | 226,250 |
| Դրամակշիռ (pesus) $^{1}/_{50}$ մարկի . . . | » | 4,525 |
| Մոդ, 10 մարզպան. . . . . . . . | Լիտր | 129,407 |
| Մարզպան, $^{1}/_{12}$ մոդոյ . . . . . . . | » | 12,940 |
| Քիլակ, $^{1}/_{6}$ մարզպանի . . . . . . | » | 2,157 |
| Եղեգնաչափ ասուոյ (Canne) . . . | Զափ (մէտր) | 2,153 |
| » մետաքսի . . . . . . | » | 2,012 |

Անուանք Զափուց փայտի նշանակին 'ի դաշնագիրս Թագաւորաց մերոց Պարզունակ, որ համարի ձողաչափ (pertica), և Ֆիլափ. յետինս՝ որ է քառորդ առաջնոյն՝ 'ի լատին Թարգմանութեան գրի Jancono, Թերևս կանգուն. որոյ վարէր և կրկնակն, կոչելով Տուպլ ֆիլափ. բայց որքանութիւն սոցին անյայտ է ինձ, որպէս և Զափք ճանապարհի յերկրիս Սիսուանայ, զի ոչ գտի յիշեալ։

1 Կարգեալ էր վերագոյնդ գհամեմատութիւնն ընդ Լոնտրայ։
2 Այս բան մասն է Է գլխոյ գրոցն Բեկոլոդգեայ։
3 Ի ԺԳ գլխոյ նոյն գրոց։
4 Ի ԺԸ գլխոյ։

5 Ի լատին Թարգմանութիւնս դաշանց՝ գրի երբեմն winchia, և վերջամասն michia.
6 Բժշկարան մի մեր ասէ. « Լիտրն 120 տրամ իմացիր »։ Յովհ. Երզնկացի, « Լիտրն այն որ փոքր էր՝ Թերևս 100 դրամակշիռ »։

**145. Դրամք Հայոց Սիսուանայ.** — *Ոչ պակաս քան զչափուց և զկշռոց, այլ և առաւել ևս հետաքննելի և կարևոր է ծանօթութիւն տեսակաց և քանակաց դրամոց, որով վարէին Հայք 'ի Սիսուան, և որով կատարէր համաշխարհական առևտուր շահաստանին Այասոյ, 'ի ձեռն բնկաց և յոգնախուռն եկաց այլալեզուաց: Ցուցին ապաքէն բանք Բեկոլոդդեայ զանուն հայկական ինչ դրամոյ և զհամեմատութիւն ընդ օտարացն, այլ գործ է և ոչ դիւրին՝ համեմատել զայն և զայլս՝ ընդ այժմու վարուն դրամոց, այսինքն ընդ տասնորդականացն: Աւանդեսցուք զոր և ինչ ազգս դրամոց Սիսուանայ գտանեմք յիշեալ 'ի գիրս, 'ի դիւանս, և 'ի մուրհակս վաճառականաց Գենուացւոց և Վենետաց, և զայնր ժամանակի համեմատութիւնս, որչափ ինչ 'ի վերայ հասաք հաւանութեամբ կամ կարծեօք, աջողագունից յայսպիսիս թողեալ զճշդելն և զպարզել:*

*Զիք երկբայել զի յառաջ քան զհաստատութիւն առնուլ վտարանդի տէրութեան Ռուբինեանց՝ դրամք Բիւզանդացւոց և Սառակինոսաց գնային և 'ի Կիլիկիա, որպէս գրեթէ յառհասարակ արևմտեան Ասիա և յԱփրիկէ. և 'ի նոցին տարազ և 'ի չափ վերածան կամ մերձեցան հայկականքն, յորժամ վստահացան ազգայինք մեր նուաճողք Կիլիկիոյ՝ յանուն իւրեանց դրամ հատանել և ընդունելի առնել: Ոչ է յայտնի տակաւին՝ ո՞ նախ 'ի սոցանէ ձեռնամուխ եղև 'ի վսեմականս յայս գործ, յոր չերևի նախնեաց իւրեանց համարձակեալ 'ի Մեծ Հայս, 'ի հզօրագոյն հարստութեան իւրեանց, կամ թէ ոչ է մեզ ծանուցեալ. զի թէ և գտանին Տիգրանայ և որդւոյ նորա Արտաւազդայ Արշակունեաց և այլոց ոմանց 'ի նոցին զարմէ թագաւորաց մերոց՝ դրամք արծաթիք և պղնձիք, այլ ոչ հայ գրով են և ոչ Հայոց անուամբ. իսկ Բագրատունեաց ոչ ստուգեցաւ ցարդ դրամ սեփական, բայց միայն պղինձ մի հայագիր այսպիսի վերտառութեամբ.* ՏՐ ՈԳՆԷ ԿՈՐԻԿԻ ԿՈՐԱ... Ա... *ոչ է յայտ որո՞յ Կորիկեայ, Հայ-Աղուանից թագաւորի՝ եթէ Կուրապաղատի ուրուք: — Հաւանութեան է թէ և յառաջ քան զթագաւորել Լևոնի Մեծի՝ հատեալ իցէ նախնեաց նորա դրամ 'ի նորաստաց երկրի իւրեանց. մի ոմն 'ի յետին պատմըչաց կամ գրչաց մերոց, (զորոյ ոչ յիշեմ զանուն), ասէ վասն Կոստանդեայ որդւոյ Ռուբինի, եթէ « Թագաւոր » կոչեցաւ և դահեկանս տպեաց ». այլ ցարդ չերևեցաւ յայդ անուն դրամ հին. բայց որդւոյ նորին Թորոսի Ա, կամ թոռին՝ Թորոսի Բի երևի պղնձիս այս դրամ, շուրջ գրութեամբ 'ի բնակողմն* ԹՈՐՈՍԻ Է ՌԲ *(այսինքն Ռուբինեան).*



**171. Դրամ Պարոն Թորոսի.**

*'ի հակակողմն դրամոյն՝ ընդ պէսպէս խորհրդաւոր նշանաց երևին և յունական տառք: Թերևս հնագոյն քան զայդ իցէ և անանուանս այս նոյնպէս պղնձի, յորոյ յերկոսին կողմանս բաժանեալ է գրուածն* ԵՆՈՐՀԱՒՔՆ ԱՑ Է. *և զուռնն պատկերեալ 'ի նմին՝ իցէ՞ արդեօք*



**172. Հին դրամ Ռուբինեան.**

*Անարզաբայն, զոր անշարժ թողեալ քաջին Թորոսի՝ 'ի պահ թշնամեաց, ինքն ելանէր և մտանէր 'ի քաղաքն, անցս ընդ պարիսպն պատառելով. կամ թէ բերդին Վահկայ՝ զոր Կոստանդնի գողացեալ՝ յոստան իւր հաստատեաց: Տեսցուք այլուր և զնախընծայ դրամ բարեբաղդին Լևոնի՝ հատեալ յառաջ քան զթագաւորելն. իսկ որ յետ թագաւորութեանն՝ գտանին ցարդ, ոսկի, արծաթ և պղինձ:*

*Ոսկի դրամն՝ որ սովորաբար Դահեկան կոչի առ մեզ, և ռամկօրէն դեկան, և ըստ գունոյն՝ կարմիր, նախ երևեցաւ կամ գտաւ յանուն յիշեալս Լևոնի, զուտ և ընտիր, և մեծաքանակ իսկ, որպիսի է պատկերեալն 'ի Տախտակին Թիւ 1. զի կշռէ 7 գրամ, աւելի քան զնաբոլէոնն ոսկի (որ է 6,452 գրամ), և արժէ գէթ 21 ֆրանգ. զոգջիր հաւասար հռոմէական ոսկւոյ* (Aureus) *'ի սկզբան փրկչական թուականին, զի յետոյ ստուարացեալ բարձրացաւ ց' 25 ֆրանգ, մինչև 'ի ժամանակս Վալերիանու կայսեր, ապա սկսաւ նուազել և զիջանել մինչև 'ի 15:60 ֆր., և կոչիլ* Solidus (aureus), *յորմէ ծագեցաւ կոչումն նորոց դրամոց սոլտի և սոլ* (Soldi, Sol, Sou). *առ կայսերօք Բիւզանդիոյ առաւել ևս նուազեալ՝ յ'ԺԲ դարու արժէր իբր 12 ֆր., և կոչէր յանուն մայրաքաղաքին՝ Բիզանդ, և սփռէր ընդ ամենայն աշխարհ, մինչև 'ի նոյն անուն (բիզանդ) կոչել և օտարաց, Արաբաց և Թուրքաց անգամ՝ զիւրեանցն ոսկի. վասն որոյ և հարկ լինէր զանազանել զառաջինն՝ ազգանուն յաւելուածով՝ Բիզանդ Հռոմոց. կոչէր սա և իպէրպէր,* 'Ηπέρπερος, *որ ըստ յունին նշանակէ հրով փորձեալ ոսկի,* (Hyperperus, Hyperpre, Perperus, Yperperi, *և այլն*), *զոր մերս Սմբատ գունդստապլ յՕրինագիրսն (Գլ. Ա) Պերպերա կոչէ. իսկ առաջին անունն գրի* Bysantius,Bisanti, Bysant, Besant, *և այլն: — Որպէս անուանն՝ նոյն և քանակին հաւասարեցին այլազգիք մահմետականք զոսկին իւրեանց զկոչեցեալն Տինար,* دنار. *և զի արևմտեայք միով հասարակ անուամբ Սառակինոս* (Saraceni) *կոչէին զԱրաբս և զԹուրքս, զՍէլճուկեանս, զեգիպտացիս և որք յԱսորիս, 'ի նոյն կոչեցին և զդրամ նոցին, յօդելով ընդ յունական կոչմանն՝ Բիզանդ-սառակին* (Bisantius Sarracinus): *Բայց գոյր զանազանութիւն քանակի և արժէից սոցին՝ ըստ այլ և այլ պետութեանց. մեծագոյն էր Դամասկացւոցն՝ Էյիւպեան մականուանեալ, կշռելով 4,54 գրամ և արժելով 15 ֆր. ազնուագոյն համարէր եգիպտականն կամ Աղեքսանդրիոյ՝ Ֆաթիմեան մակակոչեալ, 4, 10 գրամ, և 14 ֆր., ըստ այժմուս. փոքրագոյն էր Ասորւոց երկրի սառակին-բիզանդն, իբր 3,93 գրամ, և*

*արժելով 12 ֆր․, և կոչէր Սուրի՝ յանուն Սուր քաղաքի, որ է Ծուր կամ Տիւրոս՝ ըստ Նախնեաց. բայց կարծեմ թէ երբեմն մեծագոյն ևս էր՝ հաւասար եգիպտականին, կամ թէ յետինս այս ևս կոչէր Սուրի. զի բազմերախտ գունդստապլ մեր Սմբատ՝ վկայէ յԱսիզն՝ զԴեկանն Անտաքցի (ոսկի Անտիոքայ) լինել կէս կարմիր Սուրի, և այժմ ըստ նորագոյն քննութեանց՝ ոսկեակն Անտիոքայ ճանաչի 7 ֆրանգաց արժէիւք, որ է ստուգիւ կէս Ֆաթիմեանին։*

*Երկոցուն մեծաց ազգացս (Յունաց և Սառակինոսաց), որոց դրամք տիրապետեալ էին արևելեան աշխարհաց, 'ի մխել այսր արևմտեայցն Խաչակրաց՝ հարկ էր հաւասարել յայսմ մասին (տեսակի դրամոց). և զի արարին այնպէս՝ ընդ այս չիք զարմանալ. այլ զարմանալի և անկարծելի իմն այն է՝ զի ոչ միայն քանակաւ և կշռով՝ այլ և գրով և բանիւ և անուամբ ամենևիմբ նմանեցուցին սառակին բիզանդաց. այսինքն, արաբացի տառիւք դրոշմէին 'ի դրամս իւրեանց զնոյն արաբացի և իսլամական բանս, դուն ուրեք ընդ աղօտ յաւելեալ նշան ինչ քրիստոնէութեան. սակայն առ 'ի զանազանել յայլազգեացն՝ զիւրեանցն կոչէին ածանցաբար՝ ոչ սառակին այլ սառակինեան բիզանդ* (Bisantius sarracinatus, Sarracinas, Sarrazinats, Sarcenats, *և այլն). յայտ է թէ դիւրութիւն առ և տրի յերկրի անդ և 'ի մէջի այլազգեացն՝ զայս պահանջէր զգուշութիւն կամ խորագիտութիւն. այլ ոչ ողջախոհ երևէր խղճամտաց, մինչև նզովս իջուցանել 'ի վերայ նոցա՝ որոց հատանէինն կամ տային հատանել ըզդրամսն՝ 'ի Տիւրոս և 'ի Տրիպօլիս, և յաւէտ 'ի Պտղոմայիս, որ է Աքքեայ* (Accon *կամ* Acre), *ըստ արևմտեայց. բայց այս անագան ուրեմն, 'ի կէս ԺԳ դարու, յորժամ եկեալ Ս. Լուդովիկ թագաւոր Փռանկաց յԱսորիս՝ ետ քրիստոնէական բանս և նշանս դրոշմել 'ի դրամսըն, պահեալ տակաւին զարաբացի լեզուն. և այս սովորութիւն պահեցաւ մինչև 'ի բարձումն ամենայն պետութեանց քրիստոնէից յերկրէն Ասորւոց, յելս կոյս ԺԳ դարու։ — Ազնուագոյն և յաճախակի վարուն 'ի սառակինեան բիզանդս քրիստոնէից՝ էր Աքքեայն, փոքր քան զբուն սառակինս, կշռելով* 3,45 *կամ* 3,50 *գրամ, և արժելով ըստ փոքր ինչ զանազանութեանց գտելոցն արդ ոսկեաց՝* 8,43, *կամ* 8,90, *և հաւանօրէն մինչև* 9 *ֆրանգ. քանզի վկայի 'ի հին գրուածս ինչ՝ երկու բիզանդից նոցին արժել մի լիրայ տուրոնեան (փռանկաց), իսկ լիրայս այս ճանաչի արդ* 18 *ֆրանգ։ — Այսոքիւք կըրկնազգի այլ նմանակերպ՝ սառակին և սառակինեան բիզանդօք կատարէր համօրէն գործառնութիւն տնտեսութեան յարևմտեան Ասիա՝ ցդարս երկու. մինչև գլխաւոր գործօնքն՝ շահադիտակ և աշխոյժ վաճառականք Իտալացիք՝ հնարեցին նոր դրամ ոսկի. նախ Գենուացիք՝ 'ի կէս ԺԲ դարու՝ զլիրայն՝ յանուն իւրեանց կոչելով* Januinus, Genuine, *ապա Տոսկանացիք կամ Փլորենտիացիք 'ի կէս ԺԳ դարու՝ զընտիր ոսկին իւրեանց՝ Ֆլորին,* Fiorino, *և յետոյ Վենետք յամի* 1284 *զՏուկատն ոսկի,* Ducato d'oro, *զանուանեալն յետոյ Ծեգգին,* (Zecchino, Sequin), *ընտիր և զուտ ոսկւով, զոր և անայլայլակ պահեաց մինչև իսպառ, և գերազանցեալ զայլովքն՝ ճոխապէս սփռեցաւ յարևելս, ուր և արդ յետ* 600 *ամաց՝ տակաւին գտանի պահեալ և զարդասիրաց զարդ եղեալ, որպէս յայտ է։ Կշիռ սորին է* 3,452 *գրամ, արժէք՝ հաւասարակօրէն* 12 *ֆր., հաւասար ֆլորինի. յելս ԺԸ դարու՝ 'ի բարձման Հասարակապետութեանն արժէր* 11,89 *ֆր. այժմ յոմանց հաշուի* 12,60, *և յայլոց մինչև* 13 *ֆր.*[1]*։*

*Հարկ համարեցայ յիշեցուցանել զայսոսիկ ընթերցանելեաց՝ առ 'ի քաջ 'ի վերայ հասանել չափոց և նմանութեանց մերայոցս դրամոց՝ զորմէ խնդիրս է, և զորս նկատեմ՝ ճգնեալ Սիսուանեայց հաւասարել նոցայոցն, այսինքն արևելեան Լատինաց կամ Փռանկաց և իտալական պետութեանց, սակայն պահելով գեղեցիկ ազատութեամբ՝ սեփական իմն կնիք, և ոչ ծառայական հետևողութիւն։ — Զատ 'ի վերոյգրեալ լեւոնեան ոսկի մեծ դահեկանէ՝ երկու ևս փոքրագոյնք մի քան զմիւս՝ ծանօթ են ինձ. մին յանուն Կոստանդին թագաւորի (զոր և տեսաք նմանատիպ 'ի մատենիս յայսմիկ, յէջ* 216), *հատեալ 'ի կէս ԺԴ դարու, և որպէս գուշակի 'ի կշռոյն,* (3,600 *գրամ) և 'ի մաքրութենէ նիւթոյն, նկրտեալ է 'ի հաւասարութիւն փլորինի և տուկատի, և է իսկ այնպէս։ Միւսն՝ մեծագոյն՝ (Թիւ* 2) *յանուն Լեւոնի՝ անշուշտ երկրորդին, որդւոյն Հեթմոյ Ա, որ գտանի արդ 'ի հաւաքածս Շլումպէրկէրի հմուտ և ճոխ դրամաբանի, կշռէ՝ ըստ գրութեան նորին (յԱ հատոր Դիւանագրոց լատին Արևելից,* Archives de l'Orient latin, I. 678) *գրամ* 4,80, *և արժէ իբր* 15 *ֆր., որով հաւասարէ Եգիպտեան սառակին ոսկւոյ, գուցէ և սուղ ինչ ևս առաւելուցու։*

*Այսչափ ինչ վասն քանակի ոսկի դահեկանաց մերոց Սիսուանեայց։ Իսկ ձև կամ պատկերք և գրութիւն, յայտ իսկ է զի ամենևին օտարք են 'ի սառակինեան բիզանդաց, և մերձաւորք՝ այլ ոչ յոյժ՝ յունականացն. Թուի մանաւանդ Լեւոնի Մեծի հետևեալ Ալամանաց՝ յորոց ընկալաւ զթագն արքայական. քանզի 'ի դահեկանս սոցին յայնմ ժամանակի երևին նոյն տիպք առիւծակերպք, գունտ խաչագլուխ և գաւազան շուշանեայ 'ի ձեռս։ Զայս տիպ ունին հասարակօրէն և արծաթեայ դրամք նորին Լեւոնի (Թիւ* 4. 5.), *յորս սակաւք ոմանք կերպարանեն զնա 'ի ծունր իջեալ և ընդունելով զթագն 'ի Քրիստոսէ, (Թիւ* 3), *հատեալք 'ի սկզբան թագաւորութեանն. այս սովորութիւն և ձև գտանի և 'ի դրամս այլոց ազգաց մերձաւոր ժամանակաց, որպէս Վենետաց։ Հակակողման դրամոյն տիպք են՝ երկու առիւծունք կանգունք՝ 'ի մէջի ունելով խաչ բարձրաձող, որպէս և տեսանի 'ի յիշեալ դրամքդ. կամ՝ առիւծ 'ի գնացս՝ թաթեալ խաչ մի 'ի թիկանց. և այս երևի յաւէտ 'ի կնիք նորին Լեւոնի և 'ի դրամս թոռին իւրոյ Բ Լեւոնի (Թիւ* 2. 9)*։ — Պատկերի բնակողման դրամոցս այսոցիկ՝ թուին ինձ հետևեալ և ընդօրինակեալ Թուրք իշխեցողք սահմանակիցք, տեարք Սարուխանի, Մէնդէշէի և Այտընի, 'ի*

[1] *Գրիչ և տպագրիչ մեր յելս ԺԷ դարու՝ Ղուկաս Վանանդեցի՝ Ծեքին կոչէ, և «* 1600 *դինար է » ասէ. ըստ հին կշռոց ոսկիս այս համարէր* 68 52/67 *գարեհատ* (grain), *և էր* 1/67 *ոսկի մարկի. այսինքն* 67 *ոսկի տուկատք կշռէին մարկ մի ոսկւոյ. իսկ մարկն բաժանէր յ'*8 *ունկի =* 24 *դենար =* 1151 *կերատ =* 4608 *գարեհատ։ — Յիշէ Տուկատն 'ի հայ գրութեան գրեթէ 'ի նոյն ամս երևմանն։*

ԺԴ դարու, Թագաւն և գաՀով և Նշանակօք որ 'ի ձեռսն, Թէպէտ Հակակողմն դրամոց Նոցին Նմանագոյն է Ճու- շանեայ (Gigliati) դրամոց Նէապօլսեցւոց. մերոցս Հա- յոց Հետևեալ է և Կիպրացին Ենրիկոս Բ՝ յետ արձակ- մանն յարգելանէ Նոցին 'ի Լամբրունէ կամ 'ի Բարձր- բերդէ, յաւուրս Թագաւորութեան Օշնի, որում Հետևին և յաջորդքն, մինչ յառաջ քան զայն՝ ոչ երևի բնաւ 'ի դրամս Կիպրացւոց՝ այս տիպ Հայկական:

Գրուած բնակողման դրամոց Սիսուանայ՝ է անուն Թագաւորին, որպէս, ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ. սակաւք գտանին և մեծապանծ յաւելուածով ԱՄԵՆԱՅՆ Հայոց, որպէս Ա Լևոնի, այլ և Երկրորդին, որպիսի են Թիւքն 9. 11: Իսկ 'ի Հակակողմն՝ 'ի Հնագոյնսն գրի ԿԱՐՈՂՈՒ- ԹԵԱՄԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ [1], այլ յետ Մեծին Լևոնի յաճա- խեալ գրութիւն է ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ ՍԻՍ կամ Ի ՍԻՍ. գուն ուրեք և ՇԻՆԱԾ գրեալ. սակաւ ուրեք և այլայլու- Թեամբ փոխանակ չինութեան գրի ՀԱՏԵԱԼ, որպէս յայսմ



173. Լևոնի թագաւորի Հայոց.

դրամի, որոյ Նշանաւոր է և գրուած բնակողմանն 'ի սեւա- կան Հոլով ԼԵՒՈՆԻ ԹԱԳԱՒՈՐԻ ՀԱՅՈՑ: Առաջին բառն գրի երբեմն և յուղղականն, ԿԱՐՈՂՈՒԹԻՒՆ կամ ԿԱՐՈՂՈՒ- ԹԻՒՆՆ ԱՍՏՈՒԾՈՅ Է. միայն 'ի դրամ Կոստանդնի (որոյ Նորօրինակ է և գրուած ոսկի դաՀեկանին), գրեալ կայ ԿԱՐՈՂՈՒԹԵԱՄԲՆ ԱՅ ԹԳՐ. Նշանաւոր ևս է Նորութիւն տեղւոյ դրամանոցին, ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ ՏԱՐ(սոն) [2]: Նշա- Նաւոր է և յաւելուածով գրութիւն (որպէս և պատկեր) եզական դրամոյս Լևոնի Բ



174. Դրամ Բ Լևոնի.

ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ ՍԻՍ Ի ՓԱՌՍ ԱՅ: — Թուական ստոյգ կարծեմ ոչ գտանի բնաւ 'ի դրամս Սիսուանայ, և զը- տեալքն ԳՃԼԳ Թուով՝ 333? ոչ միայն ոչ ինչ Նշանակեն, այլ կեղծեալ Նորաձոյլ դրամք են, որպիսիք գտանին առ մեզ. իսկ եթէ առ այլում գտցին ստուգակերպք՝ Միամք Հաւաստեաց: Գոյ առ մեզ և պղինձ մեծ ոսկէզօծեալ կամ ոսկեթերթ (Թիւ 13), այլ Թուի Նորոց ոմանց արա- րեալ ըստ Հաճոյս աչաց: *

Արծաթի դրամք Լևոնի՝ պատկերօք Նմանք են ու- կւոյն. յաջորդացն՝ ոչ Նոյնպէս, այլ զանազան, որպէս ցուցանէ Տախտակդ, և աւելորդ Համարիմ որոշել, 'ի քանակ և յարժէս Նոցին ուշ ունելով այժմիկ. բայց ոչ է

1 Ցառուկ դրամաբանութեան՝ և ոչ առաջարկութեան գործոյս անկ Համարիմ՝ ճառել զձևոյ և զԹուոյ տառից, զուգից և աղաւ. Թերի և անթերի գրութեանց, յորս յոյժ զանազանին դրամք, և միակ բառն Աստուծոյ յայլևայլ դրամս Նոյն Ա Լևոնի գտանի գրեալ ութ կամ տասն օրինակաւ, և այս ըստ առաւել կամ Նուազ ճարտարութեան և վարժութեան արուեստաւորաց, որք՝ ոչ երկ- բայիմ թէ բնիկ Հայք էին, և ոչ Վենետք կամ օտարք, որպէս թուե- ցաւ ոմանց. այլ և դոքա յետինքդ 'ի փողերանոցն Սսոյ տային դրոշ- մել դրամս՝ յիւրեանց պէտս, 'ի Հայրենեաց կամ յայլուստ բերելով զոսկի և զարծաթ, և վասն այսորիկ Հատուցանէին սակ 'ի գանձ ար- քունի. իսկ եթէ ոչ Հատանէին դրամ՝ ազատ Ճեռյբ 'ի բաժէ ոսկէ նո- ցին և արծաթ:

2 Թէպէտ և արտաքոյ դրամական տեսութեանց, այլ ոչ և ծա- նօթութեան Սիսուանեան Հայոց իցէ Նկատումն նորաձևութեանց Կոստանդնի, որք տան գուշակել քաղաքական իմն պատճառս, տա- կաւին ոչ յայտնեալս ստուգապէս. այլ ապանումն նախորդին իւրոյ (Կի Լիւզինեան † 17 Նոյեմբ. 1344), և Կոստանդնի յօտար զարմէ լինելն, վասն որոյ և մեծ բռնաւոր կոչիլ 'ի Տարոնէլէ, կարծիս տան կամակից լինելոյ դաւաճանաց Լիւզինեանին, և 'ի նոցունց ընդու- նել զԹագն 'ի Տարոն, և յետոյ ուրեմն նուաճել զՍիս:

* Ի կարգի բանիցս Նշանակին յատկութիւնք միոյ միոյ 'ի դրա- մոց որ 'ի Տախտակիդ, յորում ընդ պատկերի Նոցին տեսցի և որակ Նիւթոյն, (Ո. ոսկի, Ա. արծաթ, Պ. պղինձ), և ձև տառիցն, Հանդերձ փակագրովք կամ զուգեալ տառիւք, և Թերութեամբ Նո- ցին, որպիսիք էին գտեալքդ առ մեզ. այլ կարգեմք և ըստ միա- Համուռ զընթերցուածս Նոցին ըստ երկոցուն ևս դիմաց, 'ի դիւ- րութիւն Թերավարժից.

1. ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ
ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈ
2. ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ
ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾ
3. ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ
ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏ
4. ԼԵՒՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ
ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ
5. ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒ......ՅՈՑ
ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏ....
6. ԿԱՐՈՂՈՒԹԻՒՆՆ ԱՅ Է
ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ
7. ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ
(Արաբերէն գրուած, տես յէջ 382)
8. ԿԱՐՈՂՈՒԹԻՒՆ ԱՅ Է
ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ
9. ԼԵՈՆ ԹԱԳԱՒՈՐ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈ
ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔՆ Ի ՍԻՍ
10. ՍՄԲԱՏ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ
ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾ
11. ԼԵՒՈՎՆ ԹԳՐ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈ
ԿԱՐՈՂՈՒԹԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ
12. ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅԻՈ
ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔ ՍԻՍԻՍ
13. ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈ ՀԱՅԻՈ
ՇԵՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔ ՍԻՍԻՍ
14. ՍՄԲԱՏ ԹԱԳԱՒՈՐ ՀԱ
ՇԻՆԵՂ ՔԱՂԱՔ Խ
15. ԱԻՇԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅ
.ՇԻՆԵԱԼ Ի ՔԱՂԱՔ ՍԻՍ
16. ԿԻ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈ
ՇԻՆԵԱԼ Ի ՔՍՂԱՔ ՍԻՍ
17. ԿՈՍՏԱՆ ԹԱԳԱԻԳ
ՇԻՆԵ Ի ՔԱՂԱԳՆ Ի Ս




175. ԴՐԱՄՔ ՀԱՅՈՑ

ԹԱԳԱՒՈՐԱՑ ՍԻՍՈՒԱՆԱՅ

արժան զանց առնել զՀեթմեան դրամովք, յորոց ոմանք զոյգ ունին զիւր պատկեր և զկենակցին՝ Զապելի, իբրև բնական ժառանգի Լեւոնի Ա, ոմանք զիւրն ևեթ, և ոմանք ևս զիւրն՝ այլ 'ի հակակողման արաբացի գրով զանուն սուլտանին Իկոնիոնի, այսպէս

السلطان الاعظم
غياث الدنيا و الدين
كيخسرو بن كيقباد

այսինքն է, Մեծապատիւ սուլտան ապաւէն աշխարհի և դենի՝ Կէյխոսրու որդի Կէյկօպատի [1]. Հանդերձ մահմական Թուականօք 636=641 ամաց, որ են 1240-1245 ամք Փրկչին, յորս՝ պայման հաշտութեան էր երկոցուն դրակից պետութեանցն, որք 'ի յետնում նշանակեալ տարւոջ գժտեալ պատերազմէին ընդ միմեանս, և յետ սակաւուց խսպառ խաղաղեցան զերիշխանութեամբ Թաթարաց։ Որպէս գտանի յաճախ 'ի դրամս օտար ազգաց, երևին և յոմանս 'ի մերայոցս բոլորակ նիշք դրամոյ, որպէս




176. Նիշք դրամոյ 'ի դրամին.

'ի Լեւոննեանս յայս։ — Ամենայն արծաթեայք Սիսուանեայց, զորս Դրամ կոչեմք և բնադրամ համարիմք, գրեթէ հաւասարք են մեծութեամբ. լաւագոյն պահեալքն կշռեն 2,900 գրամ, և ըստ այսմ կշռոյ զուգին 0,60 ֆրանգի. բայց յետնոց Թագաւորացն՝ 'ի ԺԴ դարու, նուազեալք են յարծաթոյ և յոռիք, և մարթ է կոչել զոմանս արծարապղինձս (Billon)։ — Եւ քանզի յաճախագոյն այս ազգ դրամովք, կամ կրկնակօք նոցին կատարէին առևտուրք և դաշինք յ' ԺԴ դարու, կարևոր յոյժ է գիտել զչափ և զարժէս նոցին։ Արդ առ այս մեծ և ցանկալի փաստ ընծայէ 'ի կէս այնր դարու՝ նոյն ինքն Հեթում արքայ, փռանկերէն պայմանագրովն՝ յամի 1252, որով խոստանայր 'ի հարսնացուցանելն զդուստր իւր Ֆիմէ 'ի Յուլիան տէր Սիդոնի, տալ պաշտատականս նմին 25,000 Բիզանդս սառակինեանս կշռով Աքքեայի. XXV. m. Besans Sarrazinas au pois d'Acre [2]. Տեսաք 'ի վեր անդր զի բիզանդն այն Պտղոմայիդայ կշռէր 3,300 գրամ և արժէր իբր 9 ֆր. արդ 'ի յիշելն զայս բիզանդ՝ Հեթում յիշէ և զիւրն զհայկականն, միանգամայն և ծանուցանէ լինել փոքր և չորիր մասն առաջնոյն. Quatre Besans de nos *Staurat* por un Besans Sarrazinas, al pois d'Acre. Ահա ծանուցաւ ընդ չափոյն և մակդիր հայկական բիզանդիս՝ Ստաւրատ, այսինքն է Խաչանիշ. և տեսանեմք իսկ զնշանդ պէսպէս ձևով 'ի դրամս Հայոց, որպէս և երևի՝ ըստ արժանւոյն՝ գրեաթէ յամենայն դրամս քրիստոնէից ժամանակին, մանաւանդ Խաչակրացն. և հանգոյն սոցայոցն՝ կոչի և մերս ('ի հայցական հոլով) Բիզանդ-Սառակինեան-Հայոց, Bisantios Sarracinales Armenie, և Bissancios Stauratos։ Ի հայերէն պարգևագրի Լեւոնի Բ առ Գենուացիս (յամի 1288), փոխանակ անուան բիզանդի՝ դնի նշան .▮., զոր հին լատին Թարգմանութիւնն փոխեալ է 'ի Bissancios Stauratos։ Այլ ոչ նշանակի կարևոր ևս գիտելին, նիւթ բիզանդին. որ, ըստ ծանուցեալ համեմատութեանն (ընդ Աքքեայի բիզանդին) հարկ է թէ արժէր 2,25 ֆր., կամ սուղ աւելի և պակաս, և մարթ էր լինել արծաթի դրամ մի մեծ. բայց զի ոչ գտանին յայնմ ժամանակի այնքան մեծ արծաթիք, և զի ամենայն բիզանդք՝ ոսկեղէնք էին, (Նաև Կիպրոսի բիզանդն՝ որ յատկաբար Սպիտակ կոչէր, Byzanti albi, Besant Blanc, սուղ ինչ աւելի քան զհինգերորդ մասն նիւթոյն ոսկի ունելով՝ ընդ ոսկեղէնս համարի 'ի քաջ քննողաց [3]), ապա 'ի դէպ է թէ և հայկականն Խաչանիշ բիզանդ՝ ոսկի էր փոքրիկ, կամ հանգոյն Կիպրացւոյն զուգեալ ընդ յոլով արծաթոյ. այլ ցարդ ոչ յայտնեցաւ այսպիսի դրամ հայկական՝ ոչ ոսկի և ոչ արծաթի. և չեն զարմանք, զի և հին արծաթի դրամք (դրաքմէ) Խաչակրաց՝ որոց աներկբայ է վարումն յայն ժամանակս՝ չերևեցան ցարդ։ Սակայն բանք Հեթմոյ թագաւորի և ստէպ յիշատակք բիզանդին Հայոց 'ի հաշիւս և 'ի գինս, քաջ յայտ առնեն զի էր այն իրական և ոչ լոկ անուանական դրամ. և թերևս այս կարմիր դրամք էին որ գտան հարիւրաւոր հազարօք 'ի թաքուն գանձս Հեթմոյ՝ յառման Սսոյ յԵգիպտացւոց, յամի 1266, (տես յէջ 215)։ — Հանգոյն կիպրացի բիզանդին և խաչանիշն Հայոց թուի բաժանեալ 'ի 22 կերատս. մուրհակ մի Գենուացւոց կնքեալ յԱյաս յամի 1279 (Նոյեմբ. 27) նշանակէ զգումարն 680 բիզանդ և 21 կերատ. Bissantios sexingentos octuaginta, charatos viginti unum Sarracinales de Armenia [4]. — Կիսաչափ խաչանիշ բիզանդին թուի ինձ մեծ արծաթի դրամն՝ (Թիւ 11), յանուն Լեւոնի (Բ), և արժել 1,13 ֆր. պատկերեալս 'ի Տախտակին ըստ բաւականի բարւոք պահեալ, ծակ իսկ գոլով կշռէ 5 գրամ, որ է կշիռ ֆրանգի միոյ. հարկ է

1 « Էլ Սուլդան էլ ազիմ Ղիյաս-էտտունեա վէ էտտին Քէյ Խոսրու պէն Քէյքօպատ »։

2 Այն նման գրեն և արևմտեայք 'ի մուրհակս իւրեանց, Besans bien prisés au dreit pois d'Acre. և 'ի լատինն՝ Ad rectum pondus Accon.

3 Ըստ փորձողաց խառնուրդ Կիպրացի սպիտակ բիզանդին էր

3 1/4 ոսկի
4 1/4 պղինձ
14 արծաթ
———
22 կերատ

կոմսն Մաս-Լադրի հմուտ հեղինակ Պատմութեան Կիպրոսի՝ համարէր զբիզանդն Կիպրոսի արծաթի, և արժել 2:37 ֆր., բայց Շլումպէրկէր և Լամբրոս դրամագէտ Աթենայ՝ պնդեն լինել կրկին աւելի, և արժել 4:80 ֆր։ Ձևոյն գոգած է (schyate), որպէս զբիւզանդական ոսկիս. 'ի կէս ԺԴ դարու արժէր 3 3/4 մասն վենետկեան ոսկւոյ. յամի 1410՝ իբր 1/6 նորին, իսկ յամին 1489՝ յորում Վենետք գրաւեցին զԿիպրոս՝ 1/8 մասն միայն։

4 Այլ մուրհակ նոցին՝ համարի զբիզանդն Հայոց՝ 10 փող (soldi) իւրեանց (Գենուացւոց) որոց մէն կշռէր 2,92 գրամ, արժէր իբր 0,62 ֆրանգի. և էր 1/20 մասն լիրայի նոցին, և սա արժէր յայնժամ 12,45 ֆր. բայց այս համեմատութիւն՝ այլ ինչ ոսկի բիզանդ Հայոց ընծայէ, հաւասար կիսոյ ոսկւոյ լիրայի նոցին և ֆլորինի և դուկատի, որ յոյժ երկբայական է և զգուշաւոր քննութեան։

թէ անթերի պահեալ արծաթին այն արժէր առաւել քան զֆրանգ, թէպէտ և չէր զուտ որպէս զսա. սուղ ինչ աւելի քան զայն արժէր և կիպրացի փողն (sol)։

Յետ ոսկի դահեկանին և խաչանիշ սառակինեան բիզանդին Հայոց, և յաճախեալ ապա առաւել քան զայնոսիկ' 'ի հաշիւս և 'ի վարման, է Նոր Դրամն Հայոց, որ և թուի կէս նախայիշելոյն' չափովն և կշռովն իսկ, որպէս և տեսանի 'ի Տախտակիդ (4. 5. 6. 9. և այլն). և ըստ այդոցիկ' արժել իբրև 0,57 ֆրանգի։ Յանուանէն յայտնի յետոյ հնարեալ, և այնու' պատշաճի հին կոչել զնախորդն, որ թէ վերոյգրեալն իցէ (Թիւ 11), հարկ է կոչել Երկդրամեան. բայց զի և հնագոյն արծաթիք' Հեթմոյ Ա. և Լևոնի Ա. գրեաթէ համաչափք են յետնոցն, ոչ կարեմ հաւաստել ե՞րբ եղև զանազանութիւն և ըսկիզբն Նոր կոչելոյ դրամոյն, զորոյ անուն գտանեմ նախ' դարձեալ առ մերումս Սմբատայ գունդստապլի 'ի Թարգմանութեան Ասիզաց, յերրորդ քառորդի ԺԳ դարու։ Նիւթական քանակաւն' լաւագոյն պահեալ արծաթի դրամք Լևոնի Ա. և Հեթմոյ (ըստ Զապելի և ըստ սուլտանին)' կշռեն 2,900 գրամ. իսկ ըստ այն ժամու արժէից' Սմբատ ընծայէ կարևոր փաստ համեմատութեան, զի ասէ. «Երեսուն և վեց սօլ, որ է Նոր դրամ քառասուն և չորս», յայտ առնելով Նորոյս մերոյ դրամոյ լինել $^9/_{11}$ սօլի. այլ գործ է հաւաստել զսօլն զոր իմանայր Սմբատ, կիպրացի՞ն էր արդեօք, եթէ փռանկն տուրօնեան, որ ըստ այնր ժամանակի և այժմուս' թուի համեմատել 0,90 ֆրանգի [1]։ — Ի մուրհակս ինչ Գենուացւոց կնքեալս 'ի Ֆամակոստա Կիպրոսի յամս 1299 և 1300, ցուցանի Նոր դրամոյ Հայոց լինել սուղ ինչ աւելի քան զքառորդ բիզանդի Նոցին. քանզի 100 Նոր դրամք Հայոց' զուգակշռին 27 բիզանդից Կիպրոսի, և 6157 դրամք ընդ 1708 բիզանդից, յորմէ գուշակի և ազնուութիւն արծաթոյն Հայոց յայնմ ժամանակի քան զկիպրացւոյն. որոց' եթէ ըստ վերոյգրելոցս բիզանդն էր 2,40 կամ 2,37 ֆր., (ըստ Մաս-Լադրեայ), ապա և մերս Նոր դրամ զոյգ քառորդի Նոցին' 0,60, սուղ աւելի կամ պակաս։ — Բայց ոչ միշտ զոյգ և հաւասար այսոցիկ վկային համեմատութիւնքն, այլ ըստ փոփոխել և յառաջել ժամանակաց և տեղեաց, երբեմն և խառնրդոց դրամոցն, այլ և այլ չափք ընծային. զոր օրինակ, հնագոյն մուրհակք Գենուացւոց (յամի 1274) զբիզանդն սառակինեան հաւասարեն' սուղ ինչ պակաս' 8 Նոր դրամոց. Computato quolibet Bissancio in *Daremos* octo *Novos*, minus denariis quatuor. ատ Նոր դրամն' մեծ և Նոյն երևի ընդ այնմ' զոր երկդրամեան համարեցաք, քանզի եթէ սառակինեան բիզանդն 9 ֆր. էր, որպէս ցուցաք կանխաւ, և մերձաւորաբար համեմատի 8 Նոր դրամոց, ապա մէն դրամ արժէ 1,12 և մանրիկ ինչ ֆրանգի, որչափ էր ըստ մեզ' կէսն հայկական բիզանդի։ Ի նմին ամի' իւրեանց սեփական արծաթով համեմատեալ' ասեն Գենուացիք' 'ի մուրհակի ուրեմն, զ'177 Նոր դրամ = 200 փող (soldi), կամ 10 լիրայ։ Յետ սակաւ ամաց, այն է 1279 (մարտի 10), 702 Նոր դրամք Հայոց վկային զուգահաւասարք 78 ասորի սառակինեան բիզանդաց, որ է ասել 1 բիզանդ = 9 Նոր դրամ. Նոյն բան հաստատի և այլով մուրհակաւ 'ի նմին ամի, որ զ' 12,000 Նոր դրամ զուգէ ընդ 1,333 սառակին բիզանդաց և 8 կերատի, որ և դարձեալ ցուցանէ զբիզանդն այն զոյգ կշիռ 9 դրամ Նոր. և ըստ այսոցիկ' արժէ սա 1 ֆրանգ բոլոր։ Այլ ընդ հուպ միւս այլ մուրհակ լոկ յետ ամսոց ինչ կնքեալ (10 մայիսի, 1279), փոխանակ ինունց' 10 Նոր դրամ հաշուէ զբիզանդն. Նոյնպէս հաշուէ և յետ քսան ամաց Վենետկեցի ոմն, որ գնեալ էր յԱյաս բամբակ և կոճապղպեղ 11,024 Նոր դրամոց, և զուգէ ընդ 1,102 սառակին բիզանդաց, որոց մէն լինի համահաւասար 10 Նոր դրամ, և սա' ըստ այսոցիկ' 0,90 ֆր. մինչ յառաջ քան զայս, այլ յետ 1279 ամին, այն է յամի 1284, պետութիւնն Վենետկոյ' ոչ թէ միայն նուազ քան զ10 Նոր դրամ համարէր զբիզանդն, այլ և քան զինն, այսինքն տակաւին յարգէր զՆոր դրամ և $^1/_8$ բիզանդի համարէր. զի 'ի գրուածի միում յայնմ ամի' զ600 Նոր դրամ զուգահաւասարէ 75 սառակին բիզանդաց, (600:75=8), որ է ասել ըստ վերոյգրելոցս Նոր դրամ = 1,12 ֆրանգ։ Յետ ամաց հնգից (1289) Նոյն պետութիւն Վենետկոյ' զիւր սեփական փողս 35 (soldi) կշռէ ընդ 10 Նոր դրամոց, ըստ որում մէն մի սոցին արժէ 1,05 ֆրանգ [2]։ Յետ այնորիկ նոյն պետութիւն Վենետկոյ զոյգ հաշուէ զբիզանդն' 10 դրամ Հայ և 32 փող իւրեանց, որով դրամն Նոր հաւասարի 0,95 կամ 0,96 հ. ֆրանգի. և յետ ամաց ինչ զ' 12 Նոր դրամ = 32 փող, որով զիջանէ և ևս Նոր դրամն 'ի 0,80 ֆրանգի. ապա յամի 1316 վճռէ Ծերակոյտն [3] համարել զ'12 Նոր դրամ = 30 փող. և այսու առաւել ևս նուաստացեալ և զիջեալ գտանի 'ի 0,75 ֆրանգի. և այսպէս աստիճանեալ 'ի վայրէջս' ըստ քաղաքական տագնապի տէրութեան Հայոց' յասպատակաց Եգիպտոսի և աւերման չահաստանին Այասոյ, հուսկ երևի Դրամն Նոր ցածուցեալ գրեաթէ 'ի կէս առաջին վարկին, այսինքն իբր 'ի 0,57 ֆրանգի։ — Նկատէ ընթերցողն 'ի յիշատակս յայդոսիկ, 'ի վերջին մուրհակս և 'ի վճիռս, զի յիշեալն 'ի նոսին բիզանդ' ոչ է Հայոցն' խաչանիշն, այլ ասորին կամ սառակինեանն։ Հուսկ յիշատակ մերոյս բիզանդի' գտանեմ առ մերայինս 'ի պարգևագրին Լևոնի Բի, յամի 1288, իսկ առ օտարս' յամի 1279. յորում ամի Նախ առաջին յերևան գայ ('ի ծանօթ ինձ գրուածս [4])

1 Ժամանակակից, պաշտօնակից և ազէկից իսկ մերոյ Գունդստապլին' Գունդստապլն Փռանկաց' Հռչակեալն Ժօէնվիլ, գրէր զբիզանդն սառակինեան 10 սօլ. և զի էր այն կէս տուրօնեան լիրայի (18 ֆր), որ բաժանէր 'ի 20 սօլ, ապա մէն սոցին լինի 0,90 ֆր։

2 Քանզի յայնմ ժամանակի որպէս և յետոյ' փողն այն արծաթի վենետկեան (soldo), համարէր 1/40 ոսկի տուկատին, զոր ասացաք ըստ այժմուս արժել 12 ֆր. ապա և փողն' 0,30 ֆր. արդ 30 × 35=1050:10=1,05։ Իսկ պատճէն վճռի Վենետկոյ Հասարակապետութեան յ'18 օգոստոսի, է այսպէս. Debeat... habere in Venetiis solidos 35 de uno Bisancio Saracinato, ad Deremos decem pro Bisantio uno. — *Deliber. del Maggior Consiglio.* ZANETTA f.° 329.

3 Պատճէն վճռոյ Ծերակուտին. « Super facto mercatorum Armenie ita diffinitum fuit, quod solvebant Comuni de X Deremis pro quolibet Bizancio ad rationem de Soldis 32 pro Bisancios; sic solventur de 12 Deremis pro Bisancio ad dictam rationem de Soldis XXXII pro Bisancio. — SENATO MISTI, IV, 184.

4 Ի միում մուրհակի գրելոյ յԱյաս 'ի 24 փետր. 1279, երեքին ևս դրամք Հայոց' վարուէք 'ի ժամանակի իւրեանց' միանգամայն յի-

*վերջին միակ վարուն դրամ Հայոց, որ է*

*Թագուորին. Կրսերս այս պայազատ հարստութեան սեղանոց Այասոյ և իշխող հրապարակի նորին՝ ոչ լսի 'ի հայ գիր նախնեաց մերոց, այլ 'ի թարգմանութիւնս պարգևագրաց յետին թագաւորաց մերոց, յորս ուղղագոյն գրուածն է* Tacorin, *այլ յաճախ 'ի մուրհակս և առ Բեկոլոդդեայ՝* Taccolini, *ծանօթ և Արաբացւոց Էլ-Թագֆուրիէ գրութեամբ* التافورية, *իբրու հանգոյն րէալ* (Real) *սպանիականին՝ արքայական (դրամ) նշանակելով. այսու անուամբ դրամոյ՝ սուլտանն Եգիպտոսի պահանջէր յ' Բ Լևոնէ յամին* 1285 *հարկ տարեկան* 500,000, *ըստ Մագրիզի պատմչի, որոյ թարգմանիչն փռանկ (Գադրըմէր) հաւասար համարի* 700,000 *ֆրանգաց. այս համեմատութիւն 'ի դէպ գայ վարկի Նոր դրամոյ ըստ Վենետաց և Գենուացւոց 'ի նմին ամի, որ է* 1,05 *ֆրանգ. բայց Թագուորին աներկբայապէս փոքր էր քան զՆոր դրամ՝ ընդ որում յիշի 'ի մուրհակս. և 'ի միում՝ (յամի* 1307) *գտանի համեմատեալ ևս,* 100 *Թագուորին* = 77 *Նոր դրամ, որ է ասել՝ Թագուորինն սուղ ինչ աւելի է քան զերիր մասն Նոր դրամոյ. որպէս զի եթէ Նոր դրամն արժէր յայնժամ* 0,80 *ֆր., Թագուորինն արժելոց էր* 0, 62: *Հաւասար այսմիկ ցուցանէ վաւերական համեմատութիւն վենետկեան դրամոյ՝ յամի* 1333, *յորում վճռեաց Ծերակոյտն (յ'* 13 *մայիսի), զ'* 13 *Թագուորին հաշուել* 12 *կրոս*[1]. *և զի դրամս այս սոցա՝* $^{1}/_{18}$ *էր ոսկւոյ տուկատին, (որ էրն* 12 *ֆր.), և ըստ այսմ* 0,66 *հ. ֆրանգի. արդ ֆրանգք* $12 \times 66 = 792 : 13 = 60\,^{1}/_{12}$. *ուրեմն Թագուորինն ցուցանի արժել սուղ ինչ պակաս* 0,61 *հր. որչափ տեսաք վերագոյնդ լինել զքառորդն հայկական Խաչանիշ բիզանդի, և երևի չփոթել ընդ Նոր դրամոյ. Նա զի պնդէ Բեկոլոդդի զԹագուորինն լինել դրամ մի փոքրիկ (յիւր ժամանակս, իբր յամի* 1340), *և ասէ լինել* $^{1}/_{10}$ *մասն Հոռոմոց բիզանդին*[2]: *Նոյն վաճառագիր՝ ընծայէ և այլ համեմատութիւն. մարկ մի Հայոց, ասէ, ունէր* 8 *ունկի արծաթոյ զտոյ 'ի լտեր միում, յորմէ տայր փողերանոցն Թագուորինս* 91. *իսկ առ մարկս այլևայլ օտար ազգաց՝ տայր* 109 *և մինչև* 114 *Թագուորինս, որ է իբր հնգիր մասամբ աւելի քան զՀայոցն. և զի սովորաբար* 59 *կամ* 60 *ֆրանգ համարի մարկ մի արծաթոյ ժամանակին, համեմատեալ զնուազութիւն թուոյ Թագուորինաց հայկական մարկին՝ մէն 'ի սոցանէ գտանի իբր* 0,53 *ֆրանգի: Չէ հեռի 'ի հաշուէս և պատմական համեմատութիւն դրամոյս՝ յամին* 1323. *յորում՝ սուլտանն Եգիպտոսի յետ աւերման Այասոյ՝ արկ 'ի վերայ Հայոց հարկ* 1,200,000 *դրամ. և գիտեմք զի վարուն դրամ ժամանակին էր Թագուորինն. արդ զայս գումար՝ արևմտեայք և Ցովհաննէս ԻԲ Քահանայապետ 'ի թուղթսն՝ վերածեն 'ի* 50,000 *ֆլորին ոսկի, որ զի* 12 *ֆր. արժէր, ապա և մէն մի 'ի նոցանէ* 24 *Թագուորին, և* $24 \times 50{,}000 = 1{,}200{,}000$. *ապա Թագուորինն լինի կէս ֆրանգի: Պարզագոյն ևս հաստատէ զայս՝ վաւերական գիր և պատուէր Դքսին Վենետկոյ՝ յամի* 1333 *(յունիս* 17) *առ դեսպան իւր, զոր առաքէր առ Լևոն Դ 'ի Հայս, հանդերձ այլովքն՝ խնդրել 'ի սմանէ զի առ նուազութեան արծաթոյ՝ հաճեսցի ընդունել զտուկատն ոսկի՝ փոխանակ* 24 *Թագուորինաց*[3]. *և ահա դարձեալ կէս ֆրանգի գտանի Թագուորինն. քանզի ցուցաք բազում անգամ՝* 12 *ֆր. լինել զտուկատն:*

*Այս Թագուորին դրամք են հաւանօրէն արծաթիքն գտեալք յանուն վերջին թագաւորաց Սիսուանայ, տարածութեամբ և կշռով և խառնրդով նուազք և յոռիք. գտանին և առաջնոցն մերոց թագաւորաց նովին չափով տարածութեան դրամք, այլ թանձունք են և զտագոյնք: — Գտանի փոքրագոյն ևս դրամ արծաթի, որպիսի է Թիւն* 8, *Հեթմոյ և Զապելի, ընտիր ձևով և խառնրդով, և թուի կէս բնադրամոյ, կամ* $^{1}/_{8}$ *Խաչանիշ բիզանդին, խաչանիշ և ինքն գոլով 'ի թաթս առիւծուն. կշռէ* 1,50 *դրամ. և արժէ իբր* 0,30 *ֆր. որով համեմատի վենետկեան փողոյ (սոլտոյ) տուկատին: — Առ 'ի բովանդակել զծանօթութիւնս զայս Թագուորին դրամոյ՝ յիշեցից, զի 'ի նմին մուրհակի* 1279 *ամին՝ յորում նախ առաջին յիշէր անուն սորին, 'ի միում նուագի զուգաբար առադրի Դրամ–թագուորին,* Habuit a me... *Daremos* quindecim *Tacorinos*: — *Յիշեսցի դարձեալ Բեկոլոդդեայն, որ հաւասար համարի զԹագուորին և զասարն կամ զսպիտակ*[4] (aspre) *ստակն Դավրիժու, զոր և ասէ լինել* $^{1}/_{6}$ *բիզանդի այնր մայրաքաղաքի Ատրպատական աշխարհի: — Քանզի այսու փոքր արծաթի դրամով՝ Թագուորինաւ՝ կատարէր առ և տուր Այասոյ՝ 'ի յետին ժամանակս, մարթ է գուշակել՝ քանի՛ անբաւ կոյտք էին այնր 'ի հրապարակի անդ*[5]:

*Պղնձի դրամք Սիսուանայ գտանին մեծք և փոքունք. մեծագոյնքն՝ տարածութեամբ հաւասար են այժմեան տասնորդական երկփողոց* (pièce de deux sous), *այլ*

*չին. Բիզանդ խաչանիշ, Նոր դրամ, և Թագուորին, որպէս անցեալ, ներկայ և ապառնի շահատանի նոցուն. այլ, աւաղ է զի ոչ նշանակի և համեմատութիւն նոցին ընդ իրերաց:*

1 *Քանզի և դրամոց այլոց տեղեաց՝ որոց վաճառակցութիւն էր ընդ Հայոց, համեմատութիւն առնէ վճիռ Ծերակուտին, ոչ աւելորդ համարեսցի՝ հրատարակել զվաւերականն զայն.* Cum sepissime questiones veniant inter patronos galearum et navium et mercatores, de restis nabulorum, et occasione mensarum; vadat Pars, quod si dictis patronis restaret aliquid habere de naulis in Constantinopoli, aut occasione mensarum, debeant recipere in solutionem *Yperpera* I. pro *Grossis* XIII ÷. Et similiter in Tana et per totam Gazariam debeant recipere *Asperos* XV pro grossos XII. Et similiter recipiant in Trapesunde *Asperos cavalarios* XIII pro grossis XII. — Et hec scribantur Rectoribus nostris ad quod spectant, ut jus tribuant habentibus, si questio coram eos moverent.

Capta. Et simili modo observetur in Cypro et *Hermenia* de nabulis et mensa, quod accipi debeant in Cypro pro grossis XII Bisancios albos II ÷, et in Hermenia pro grossis XII *Taculinos* XIII. — Senato Misti, XV, f.° 66.

2 *Թուի և բիզանդս այս Հոռոմոց՝ նուազեալ յայնմ ժամանակի և հաւասարեալ* 7 *ֆրանգի, սուղ աւելի կամ պակաս:*

3 Committetur etiam dicto Ambaxatori, quod procuret obtinere, suo posse, quod Ducata auri recipientur pro Taculinis XXIIII pro quolibet. — Senato Misti, XVI, 14-5.

4 *Սովորական հաշուէդրամ ժամանակին էր Սպիտակս այս կամ ստակ* (Aspre), *այլ զանազանեալ ըստ տեղեաց. Դանայ (Ազախու) ասարն՝* 0,59 *հր. ֆրանգի էր, ըստ Զիպրարիոյ, Տրապիզոնինն՝ որ և Գոմայլ կոչի՝* 0,42 *հր. ֆր., Դավրիժոյն մեծագոյն երևի քան զայսոսիկ. ըստ վենետկեան վճռոյն՝ (ծան. 1) մեծագոյն է և Տրապիզոնին:*

5 *Վաճառական ոմն վենետկեցի* (Servo-Dei, *Աստուծոյ-ծառայ անուն), յամի* 1330, *'ի ցուցակի պահանջից իւրոց 'ի Հայոց, յիշէ 'ի հինգ պարկս զգումար* 46,601 *Թագուորինաց, զատ յայլոց դրամոց:*

Նրբագոյնք. լաւագոյն գտեալն առ մեզ՝ կշռէ 6,⁶⁰⁰ գրամ, իսկ երկփողն տասնորդական՝ է 7,⁷⁰⁰: Արևմտեայք՝ Կներատ կոչեն և զիւրեանցն և զՀայոցս պղնձի դրամ, այլ մեր բնիկքն անուանեն Քարտէզ. գտանի և սա յիշեալ 'ի Սմբատայ յԱսիզսն, հանդերձ համեմատութեամբ. «Քարտէզ ծը, ասէ, որ է սօլ մէկ ու կէս». ուրեմն սօլն 12 քարտէզ էր, որոց մէն՝ դենար, Denier, կոչէր առ Փռանկս, և արժէր 0,05 կամ 0,04 ⁴/₅ ֆրանգի: Ց' 12 մասունս բաժանէր և Հայոցս Նոր դրամ: Կտակող ոմն գենուացի յԱյաս, յամի 1279, ասէ ունել 1618 դրամս և 10 ¹/₂ Դենարս Նորս [1], որ են Քարտէզք Հայոց. իսկ ըստ Արաբացւոց՝ խարուպ և 'ի յոգնականն խարէրիպ կոչէր կեր ատն յոյն, յորմէ և Ceratonia լատինական, նշանակելով զկուտ եղջերենւոյ, վասն որոյ և Siliqua կոչէր առ Լատինս. զարաբացի անունն՝ արևմտեայք յեղին 'ի Charublos կամ Karubius: Այսպէս արժան է ընթեռնուլ և զգրեալն համառօտիւ Chros' 'ի մուրհակի միում Գենուացւոց, յամի 1271, յորում ասի կողոպտեալ նոցա 'ի Կոռիկոս 22,797 բիզանդս և 7 Chros. այսպէս և 'ի հայերէն պարգևագրին Լևոնի Բ (յամին 1288) Քր. գրեալ է Քարտէզն, զոր լատին թարգմանն մերթ 'ի Karubius փոխեալ է և մերթ սխալ՝ 'ի Դրամ: — Ի 10 դենար բաժանէր Թագուորին դրամ, ըստ Բեկոլոդդեայ. և այսու ևս հաստատի լինել սորա ⁵/₆ Նոր դրամոյ՝ որոյ դենարք էին 12: Ի համարելն զսոսա համեմատաբար՝ զմին իբր 0,60 և զմիւսն 0,50 ֆրանգի, 'ի դէպ է և ըզՔարտէզն համարել՝ ըստ վերոյ նշանակելոյն 0,05 (հինգ հարիւրորդ ֆրանգի), որով՝ և զնախ ցուցեալ պղինձն մեծ (Թիւ 12), իբր կրկնակ Քարտէզ. իսկ 'ի համարելն զդրամն իբրև կէս Բիզանդի՝ հարկ է և զՔարտէզն համարել 0,10 հր.: — Են և փոքր պղնձիք՝ քառորդք Քարտիզի, որք կոչին առ մեզ Փող և յոգնաբար՝ Փողեր, ըստ որում և Դանկն Արաբաց՝ կտորէր 'ի 4 Բուլ կամ Բալս. այսպիսի է Թիւն 14, պղնձեակ Սմբատայ [2]:

Իբրև համառօտութիւն ցայս վայր ասացելոցս՝ առաւել կամ նուազ հաւանութեամբ, կարգեմ զցուցակս քանակութեան, զկշռոյ և զարժէից յիշեցելոցն դրամոց Հայկականաց, և զօտարաց ոմանց համեմատելոց ընդ նոսին, փափագելով զիւտի նորոց դրամոց Սիսուանեայց և ստուգագոյն ևս քննութեանց և համեմատութեանց:

| ԴՐԱՄՔ | ԿՇԻՌ ԳՐԱՄ | ԱՐԺԷՔ ՖՐԱՆԳ | |
|---|---|---|---|
| Ոսկի. – Դահեկան Լևոնի Ա. . . . . . . | 7 | 21 | |
| » Լևոնի Բ. . . . . . . | 4,80 | 15 | |
| » Կոստանդնի Բ. . . . . | 3,60 | 12 | |
| Բիզանդ-սառակին Աղեքսանդրիոյ . | 4,10 | 14 | |
| » » Էյիւպեան, (Դամասկոսի) . | 4,54 | 15 | |
| » » Սուրի (Ասորւոց) . . . . | 3,93 | 13 | |
| » » Սառակինեան Աքքեայի . . | 3,30 | 9 | |
| » » Սպիտակ Կիպրոսի . . . . | 3,870 | 4,80 | |
| » » Սառակինեան խաչանիշ Հայոց | | 2,25 | |
| Արծաթի. – Փող մեծ կամ Կրոս Կիպրոսի . | 6 | 2,37 կամ 2,40 | |
| Հին Դրամ, Երկգրամեան Հայոց . | 4,65 | 1,13 | Արծաթ զուտ 'ի սմին գտանի աւելի քան զ'0,70 ֆրանգի: |
| Նոր Դրամ, մինչին հաշուով ցամն 1316 | 2,90 | 0,85 | Ի լաւագոյն պահեալ դրամքս արծաթ զուտ գտանի 0,42 ֆրանգի և աւելի: |
| » յետ 1316 ամի . . . | | 0,75 | |
| » յետոյ ևս . . . . . . | | 0,57 կամ 0,60 | |
| Թագուորին, նախ . . . . . . | 2,48 | 0,62 | Տէ Սիմոնի գիտնական գենուացի համարի 'ի Թագուորինն արծաթ զուտ՝ 1,65 գրամ: |
| » յետոյ . . . . . . | | 0,49 կամ 0,50 | |
| Կիսադրամ Հեթմոյ և Զապելի . . | 1,56 | 0,30 | Ի դրամիկս յայս արծաթ զուտ գտաւ 0,21 ֆրանգի: |
| Դրաքմէ (Դրամ) Խաչակրաց . . . | 2,60 | | |
| » » փոքր . . . . | 1,20 | | |
| Պղնձի. – Քարտէզ կամ Դենար, մեծ . . | 6,70 | 0,10 | |
| » » փոքր . . | | 0,04 ⁹/₁₀ | |
| Փող, փողեր . . . . . . . | | 0,01 ¹/₄ | |

1 Confiteor me habere in pecunia numerata Daremos mille sexcentos decem et octo, et Denarios decem et dimidum novos de Armenie.

2 Մխիթար Գօշ՝ որ գրէր ամօք ինչ յառաջ քան զիշխանանալն Մեծին Լևոնի, 'ի Դատաստանագիրսն (Գլ. ճԴ. ՄԾ.) հաշուէ 'ի Դահեկան (ոսկի) = 6 Դանգ = 24 Թասու = 72 Գարի. այսինքն Դահեկանն կամ Դեկան՝ բաժանէր 'ի 6 Դանգ, Դանգն 'ի 4 Թասու, Թասուն յ' 3 Գարի: Ցօրինակս ինչ գրոցն՝ փոխանակ Դանկի գրի Քարտէզ: Այլ գրիչք յետ նորա՝ փոխանակ Դահեկանի զԴրամն (արծաթի) առեն 6 Դանկ: — Առ զբօսանս ինչ յաւելից զանուանս դրամոց որով վարէին 'ի Մեծ Հայս՝ 'ի կէս ԺԴ դարու, յորում

146. Ցետ գիտելոյ զիսկական համեմատութիւն համանիւթ և համակշիռ հին և նոր դրամոց, արժան էր գիտել և զպատահական վարկ կամ արժէս նոցին՝ ըստ գոյից՝ 'ի հնումն և 'ի նորումս. յորում՝ մեծ խտիր զանազանութեան գտանեն տնտեսականք, բարձրագոյն յոյժ համարելով զյարգ ոսկւոյ և արծաթոյ 'ի միջին դարս, ոչ այնքան առ նուազութեան նոցին՝ որքան առ բազում ինչ կիրառութեանն, յանօթս, 'ի կահս, և այլն. և ներհակարար՝ դիւրագինս և սակաւարժէս համարին զայլ նիւթս, ուտելիս և ագանելիս և զպէսպէս վաճառս: Բայց ոչ միաբանին յայս կարծիս և 'ի համեմատութիւն դրամոց և գոյից՝ 'ի միջին դարս անդ, 'ի ժամանակի Ռուբինեանցն թագաւորութեան. ոմանք եօթնպատիկ աւաւել քան զայժմուս համարին զյարգ ոսկւոյ և արծաթոյ, և նուազ զնիւթոց. օրինակ իմն, եթէ այժմ, ասեն, ոսկւոյ միոյ (Նապոլէոնի) մարթ իցէ գնել քոռ մի ցորենոյ, յ' ԺԳ և ԺԴ դարս՝ մարթ էր գնել այնու եօթն քոռ [1]. բայց այլք երկպատիկ միայն աւաւել համարին զզանազանութիւն հնոյն և զայժմուս. և այսմ 'ի դէպ է յօրինակ առնուլ զցուցակն զոր կարգեցաք յէջ 370:

Որպէս գիարդ և կայցի ոք զայս, եթէ հնար էր գտանել զհաշիւ և զցուցակ գէթ միոյ ևեթ տարւոյ մտից և ելից բաժտանն Այասայ, ոչ երկբայիմ զի հիացուցիչ գումար մեծ յանդիման մեզ լինէր: Փոքր 'ի շատէ օրինակ մի առ այս ընծայեսցի 'ի Գիւանաց Վենետկոյ. որոյ Պայլն յԱյաս՝ Գրիգոր Տոլֆին՝ գրէր առ դուքսն, յամի 1312, եթէ վաճառականք վենետկեցիք (27 կամ 28), արարին անդ առևտուր 385 կամ 400,000 Նոր դրամոց, նշանակելով և գիւրաքանչիւր բաժին. այլ զգալի ևս տայ տարացոյց այլով հաշուով. իրաւունք էին Պայլին 'ի գնոյ ամենայն վաճառելեաց առնուլ բաժ՝ կէս առ հարիւր. և ինքեան՝ յամ և կէս, կամ թէ շատ՝ յերկեմեան ժամանակի՝ հասեալ էր բաժին 60 լիրայ կրոսից, որոց մէն արժէր 10 ոսկի տուկատ, և մէն ոսկի 12 ֆր. արդ 10×60=600 ×12=7200. այսինքն, յառևտրէ Վենետաց վաճառականաց հասեալ էր նմա սակ 7200 ֆր., միայն 1/2 100 ընդունելով. ուրեմն բովանդակ առևտուր վաճառուցն էր երկերիւր անգամ աւելի քան զայն, այս է 1,440,000 ֆր. ըստ նիւթական արժէից դրամոց, իսկ ըստ իրականին՝ համեմատեսցի ընդ վերոյգրեալ համարման տնտեսականաց: Եւ այս միայն Վենետկոյ վաճառականացն է հաշիւ, յոր՝ թէ մարթ էր գիտել և յաւելուլ զառ և զտուր այնքան խառնիճաղանճ ազգաց՝ զոր 'ի վեր անդր թուեցաք, քանի՛ միլիոնից մուտք և ելք լինէին ընդ Այաս և նշանակէին 'ի տումարս բաժտանն. ո՛րքան կոյտք թանգարաց 'ի թարս նորին կշռէին. ո՛րքան մթերք բարդեալք և բլրացեալք 'ի բեռնթափս և 'ի բեռնբարձս նորին. և ո՛րքան գումարք գանձուց մտանէին 'ի ջամբռն արքունի, որ ոչ թէ կէս առ 100, այլ և՝ 2 և 4 առնոյր 'ի կշռելեաց, և այսչափ կամ այնչափ ըստ գլխոց և հատից կենդանեաց [2]: — Սակաւ ինչ գտանեմ յիշեալ յօրինաց կամ յիրաւանց արքունի բաժից, և զչափս 'ի սակաւուց անտի՝ 'ի պարգևագրին Լևոնի Բ առ Գենուացիս, յամի 1288, յորում՝ յոլովից նիւթոց միայն զՍամսարչեան (Censaria, Courtage) պահանջէ. իսկ որիշ և առանձին նշանակէ՝ հայկական դրամովք զառաջիկայ ցանկեալքս.

Առ մէն Ձի և Ջորի* (գնեալ և հանեալ) բիզանդ խաչնից 4

| | | | |
|---|---|---|---|
| Էշ* . . . . . | Նոր դրամ 5 | | |
| Պախրէ* . . . . . . . | 3 | և Քարտէզ | 1 |
| Ոչխար* . . . . . . . | 0 | » | 4 |
| Կաշի գոմշոյ և պախրէի* . | 0 | » | 6 |
| Պղպէ (տակառ կամ աման) Գինւոյ և Ջիթոյ . . . . . . . | 1 | | |
| Սարի (գերան) 'ի գետանցս . | 2 | | |
| Փայտ, առ Պարզունակ . . | 0 | » | 18 |
| » առ Ցիլախ . . . | 0 | » | 4 |
| » առ տուպլ (կրկին) Ցիլախ | 0 | » | 13 |
| Բեռն՝ 'ի Նաւանցս . . . | 1/2 | | |

գրէ ոմն 'ի մերազնեայց անդ, փող, Դրամ, Աղուէ, Ղուանէ (յանուն Ղանից Թաթարաց), Կարմիր և Ասսփար?. նոյն յիշէ և զ'Խոհենին, և ասէ արժել 10 փող: Ի յետնոցս՝ Ղուանէ համարեալ էր 1/14 յունական ոսկւոյ (հիպերպերի). զորմէ նշանակէ ոմն 'ի ժամանակագրաց մերոց, եթէ յամի 1299, «Ի Հռոմք հանին նոր դրամ » յանուն Խուանէն, և սուլտանին դրամն խափանեցաւ »: Իսկ Բեկոլոդդի յիշէ զոսկին Casanini, և ցուցանէ սուղ ինչ պակաս քան զտուկատն (որ էր 28 կերատ, իսկ միւսն 23 1/8):

1 Ի ճահ գայ այսմ հաշուի համեմատութիւն գնոյ ցորենոյ 'ի գաւառի միում Գերմանիոյ (Պրունզվիք), զոր հաւաքեաց Շէրէր հեղինակ Պատմութեան Վաճառականութեան. չափ ցորենոյ յերկրի անդ կոչէր և կոչի Հէյմտ, Himt, և կշռէ 31 լիտր՝ ըստ տասնորդական չափուց. իսկ արծաթն հաշուի էր Կրօշ, որ է ըստ այժմու 0,10 ֆրանգի. և բաժանէր յ'12 ֆէնինկս: Արդ չափ մի (հիմդ) ցորենոյ արժէր անդ յայլ և այլ ժամանակս, այսպէս. յամի

| | | | |
|---|---|---|---|
| 1330 | Կրօշ | 1, 3 | ֆէն. |
| 1432 | » | 2 | » |
| 1500 | » | 4 | » |
| 1550 | » | 7 | » |
| 1595 | » | 18 | » |
| 1643 | » | 20 | » |
| 1705 | » | 22 | » |
| 1755 | » | 26, 3 | » |
| 1785 | » | 33 | » |

2 Ոչ է տեղւոյս քննել զաղբերս արքունի հասից, այլ յիշեցի՝ զի ըստ ծանօթութեանն զոր ետուն արևմտեայք առ Բալտունիայսեան՝ յամի 1325, հաստատեալ էր Գլխահարկ 'ի Սիսուան, բիզանդ մի ոսկի (սառակինեան) առ այր 'ի քսանամենից և 'ի վեր: Իսկ յարգեանց երկրի՝ ըստ օրինադրութեան Սմբատայ Գունդստապլի՝ արժան էր առնուլ զտասանորդն. «Ածուք ու այգիք, ասէ, 'ի » տասն՝ մէկ տան »: Ի պախրէից՝ զոչխար միայն յիշէ, և նոյնպէս գրէ. «Ի տասն՝ մէկ առնու Պարոնն», և ընդհանուր վասն այլոց ամենայն չահաբերից. «Ըղորդ հարկուն սահմանն այս, որ զինչ » Աստուած տայ հարկատուին՝ 'ի հինգն մէկ է»: Կանոնաւոր հարկապահանջութիւն յայտ առնէ և զկանոնաւոր Նեհ (Tarif) վաճառուց. քանզի ըստ բանից նորին օրինագրի, «Նեհն (է) որ կու կեցընէ զա» մէնն, և թագաւորացն է չալակ». այսինքն թագաւորաց պարտք են սահմանել զայն. և որպէս. — «Որ, թագաւորն ժողովէ զիր գա» ւառապետքն և գիշխանքն՝ 'ի յամէն աշուն, երբ տարոյն մուտքն » մտէ, որ քննեն և գնդղումն այնեն՝ 'ի մուտքն և 'ի տարին, և » 'ի կանոնուխն Նեհ գնեն՝ զծախուն պատեհվորքն. և 'ի հետ վ'ի » հետ 'ի վերայ չքաւորութեան տարոյն և լխութեանն, որ ոչ ծա» խողքն զրկին և ոչ գնողքն, և հովուի աշխարհք»: Նոյն և վասն ընդհանուր օրինաց վաճառուց՝ ապդէ. «Պարտ է գիտել, որ ըղ» Պագրինոյն (վաճառականաց) սահմանն և զվաճառացն՝ 'ի քաղաք » և 'ի դուրս, Պարոնութիւնն սահմանէ, գիրաւունք, զչափ և զկըշ» իռ, և զամենայն այսպիսիքս, և Տուկ (պաշտօնեայ) և մաքսաւ» որ (տարիկան, քննիչ կարգէ), որ տեսանելով ըղորդ պահեն »:

* Զատեղանիշքս ազատեաց Լևոն 'ի բաժէ, այլ ոչ և 'ի տամարչէից:

*Ցանցս Այասոյ և Կոռիկոսոյ,*

| | | |
|---|---|---|
| Պրիսիմ և Մետաքս, առ մէն ըղտաբեռն | . . . . | 25 |
| Լեղակ և այլ Ախսյխիրք » » | . . . . . | 25 |
| » » » ջորէբեռն | . . . . . | 19 |
| » » » իշաբեռն | . . . . . | 16 |
| Պղպեղ, Կոճապղպեղ, Որդան փայտ, | | |
| յըղտաբեռն | . . . . | 20 |
| Կտաւիք Ֆռանկի » | . . . . . | 20 |
| » » ջորէբեռն | . . . . . | 15 |
| » » իշաբեռն | . . . . . | 12 |
| Բամբակ, Շաքար, Սնդիկ, Կլայեկ, Պղինձ, Մնճան | | |
| (բուստ), յըղտաբեռն | . . . . . . . . | 15 |
| » » » » ջորէբեռն | . . . . . | 12 |
| » » » » իշաբեռն | . . . . . | 9 |
| Սապոն, յըղտաբեռն | . . . . . . . . . | 10 |
| » ջորէբեռն | . . . . . . . . . . | 8 |
| » իշաբեռն | . . . . . . . . . . | 7 |
| Ցորեան և Գարի * | . . . . . . . . . . | $^{4}/_{100}$ |
| Երկաթ | . . . . . . . . . . . . . . | $^{1}/_{100}$ |

Առ խուն ինչ բաղդատութիւն հայկական բաժիցս ցանկելոց, Նշանակեցից և զսակսս 'ի սահմանելոցն յօրինագիրս կամ յԱսիզս Երուսաղեմի, յելս ԺԲ կամ 'ի սկիզբն ԺԳ դարու, ('ի ՄԽԲ գլուխ Օրինաց Քաղաքացեաց, Les Assises de la Cour des Bourgeois). յորս տեսանի ըստ գնոյ նիւթոցն հասարակօրէն բաժ սահմանեալ $^{10}/_{100}$, որ է ասել՝ ըստ Ամբատայ՝ մէկ 'ի տասն։

| | | | | |
|---|---|---|---|---|
| 100 Բիզանդ Պղպեղի՝ բաժ, Բիզանդ | | | 11, | խառուպ 5 |
| » | » | Բամբակ | » | 10, 18 |
| » | » | Ասր | » | 11, 10 |
| » | » | Խունկ | » | 8, 19 |
| 100 Բիզանդ Մետաքս, բաժ՝ Բիզանդ | | | 11, | 5 |
| » | » | Կոճապղպեղ | » | 4, 4 |
| » | » | Մոմ | » | 11, 5 |
| » | » | Ցորեան | » | 10 |

— Ի կշռեալ նիւթոց, Նշանակի Շաքար, առ ուղտաբեռն՝ 4 բիզանդ սառակինեան, առ ջորէբեռն՝ մի քառուրիճ որ համարի $^{1}/_{3}$ բիզանդի. իսկ 'ի ծովէ բերեալ շաքարոյն բաժ՝ էր ըստ վերոյգրելոցն $^{10}/_{100}$։

Յետ յիսուն և երկու ամաց պայմանադրութեան Բ Լևոնի, Թոռն Նորին Լևոն Դ երևեցուցանէ 'ի ցուցակի պահանջից իւրայոցն 'ի Վենետաց, զի սակ բաժին առ մէն բոռլ բամբակի արտահանելոյ յերկրէ իւրմէ՝ էր իբրև Թագուորին մի՝ միջին հաշուով։ Նոյն և յամի 1333 Նշանակէ զհարկ գինեվաճառաց՝ Թագուորին մի յեօթնեկի (աւուրց), այլ ազատ առնէր յայսմանէ զՎենետս, և Նոր դրամ մի՝ առ մէն փարչ (Veges) գինւոյ և քաղցու, 'ի գնելն և 'ի վաճառել, և դրամ երկու յարտահանելն. այլ և զայսոսիկ Թողու Նոցա։

Շատ լիցին այսքան յիշատակք և ցուցակք 'ի հաւաստիս մեծագումար և յաճախամուտ աղխամաղխի, վաճառուց և հասից 'ի Բաժտուն Այասոյ և 'ի գանձ արքունի. որովք՝ բաւէր սա և յետ այնքան հարուածոց և հատուածոց երկրին՝ յեգիպտական բռնութենէն և 'ի հարկապահանջութենէ, դար մի ևս ժամանակի յոտին պահել զազգ և զտէրութիւն, զփառս և զհրապոյր պանծալի շահաստանին իւրոյ և զաշխարհամուտ Բաժտանն. որ հարկաւորեաց և զմեզ այսքան երկարել զԳրուագ բանիս. զոր՝ արդ կնքելով պատուական պատճենիւ պարգևագրին Լևոնի Բ՝ որ առ Գենուացիս, և ձևով ձեռնագրի Նորին **, դարձցուք 'ի յետին յիշատակս Այասոյ։

** Բնագիր Պարգևագրի Լևոնի Բ պահի ցարդ 'ի դիւանս Գենուայ, կապտեալ միայն 'ի վերնագրէն և յոսկի կնքոյն. և է այսպէս.

. . . Սուրբ Հոգւոյն ամէն։ Այս մեր Թագաւորական բարձր հրամանք է և հաստատութեան Սիգեղ[1], Լևոնի ճշմարիտ ծառայի Աստուծոյ և Նորին շնորհաւք և ողորմութեամբ Թագաւորի ամենայն Հայոց. զոր պարգևեցաք աստուածայհաստատ գումնին[2] Ճնվիզացն, 'ի խընդրոյ պատուելի եւ իմաստուն իշխանին, մեծապատւեալ վիգայրին, Ճնուվիզացն գումնին ծովու այս դեհիս և մեր Թագաւորութեանս կատարել և հաւատարիմ սիրելոյն Սիր Պէնէթ Զաքարէին[3], վասն ճընուվեզ վաճըռկներոյն, որ լինի իրենց սահմանն այսպես. Յառաջ, որ մեր քաղքնոյն որ ի մեր ձեռք կան, Նայ բաժերն ու իրաւներն լինի որպես Այասուն է, զարդ եղ[4] 'ի յայն տեղեստնոյն, որ 'ի սիգեղն գրած կայ, և զինչ իսկի իրք ծախեն 'ի շուկայն սամարով ու 'ի տունն թէ ծախեն, Նայ քանց զսամարչեքն այլ իրք չտան. և գինի թէ պըտթէով[5] ծախեն ու թէ փարչով, Նոյնպես ու ձէթ թէ պըտթէով ու թէ ճառաով որ անկիչեռ ծախվի՝ Նայ իրաւունք չտան քանց սամարչեքն 'ի պըթեն Նոր դրամ մեկ։ Եւ 'ի ծառայքն որ կու գնեն ու 'ի յերկրես հանեն, Նայ իրաւունք կու տան, Նայ չտան իրաւունք. ապայ թէ քրիստոնէ ծառայք գնեն Նայ երդնուն որ տաճկի չըծախեն ու ոչ հայնց մարդոյ որ կամենայ տաճկի ծախել. Եւ փայտին իրաւունք որ կու տային, 'ի պարզունակն ՔՐ, ԺԸ, 'ի Փիլախն ՔՐ, Դ, 'ի տուպլ Փիլախն ՔՐ, ԺԳ, և զարդ զայս կու տային ի Ճ, մեկ, Նայ զայն որ 'ի հարիւրն մեկ կու տային՝ Նայ չտան, ապայ զայլն տան. Եւ 'ի ցորենն և 'ի գարին որ ծովով կու բերեն Նայ կու առնուն յիմնցէ 'ի հարիւրն չորք, ու զսամարչեքն. Նայ զայն որ 'ի հարիւրն չորք կու տային Նա՝ չտան, ապայ զսամարչեքն տան։ Եւ 'ի գրաստնոյն հանելն որ 'ի յերկրես կուհանեն Նա կու տան 'ի ձին ուի ջորին, =Ա չորս և 'ի յեշն Նոր դրամ հինգ. և 'ի պախրեն Նոր դրամ երեք. Քր. մեկ, և 'ի յոչխարն Քր. չորս. 'ի գոմշու կաշին Քր., վեց, 'ի պախրի կաշին Քր. վեց, Նայ զայս իրաւներս չառնուն յիմնցէ. և զինչ հաւ ու հաւու կիթ

1 Պարգևագիր, Հրովարտակ կնքեալ, Sigillum.

2 Հասարակութիւն, Comune.

3 Հաչակաւոր պաշտօնեայ և ծովապետ Զաքարեան տոհմի Գենուացւոց, որ եկաց ընդ երկար 'ի կողմանս Սիսուանայ. և 'ի սմին ամի Պարգևագրին՝ կարգեցաւ իշխան Փոկէայ 'ի Յունաստան, յետոյ (1304) իշխան Քիոս կղզւոյ, զոր եԹող 'ի նա կայսրն Անդրոնիկոս Պալէոլոգ, (խնամին Լևոնի, սկեսրայր քեռ Նորա՝ ՌիԹայ), և † 'ի 1307։

4 Զարդ եղ, զատ 'ի, բաց 'ի։

5 Տակառ, Botte իտալերէն։

գնեն ու Հանեն Նայ չտան իրաւունք. Եւ զայն սարէչեքն[1] որ կու առնէին յիրմնցէ 'ի գետրերընին, յամեն սարի Նոր երկուք, Նայ չառնուն յիրմնցէ. Նոյնպես և գրաստ զինչ գնեն, քան զսամորչեքն այլ իրք չտան. Եւ երկաթ յոր տեղ ու գնեն Նայ չտան քանց 'ի Հարիւրն մեկ. և 'ի Նաւերոյն անցն որ կու անցնին Նայ տան դաւատիկ յա- մեն բեռն Նոր դրամ կէս. Եւ Ճընվիզի իրք որ գողընվի, Նայ զինչ ազգ որ ու լինի գողն, ու գտվի իրքն, Նայ երե- քակն չառնուն յիրմնցէ. Եւ վանց վաճռկներոյն որ եփ կու գան Նայ զիրենց սնդկնին կու բանան, ու զիրենց իրքն 'ի գիր կու առնուն, Նայ չբանան զիրենց սնդկնին ու ոչ մատնէհրեն ու ոչ գրեն զիրենց իրքն. Եւ վանց ճընուվեզ վաճռկներոյն որ չլինին ճանչած Ճընուվեզ Ճընուվիզի որդի, Նայ զունցն[2] իր աղեկ մարդկաւքն[3] այնէ կեցցու- թիւն[4], որ Ճընուվեզ լինի ու Ճընվիզի որդի. ու յղղարկէ զիր մարդն ու զփայտն[5] 'ի բաժտունն, Նայ մենակ խալը- սեն զինք, ու գրեն 'ի մեր տիւանն զգաւնցին անունն ու զվկայիցն. Եւ զոր կու արգիլէին զվաճռկներոյն կումաշն ինչ վի կու երթային 'ի տարս[6] ու բաժտանէն Թուխթ բե- րէր 'ի մինապանն, Նայ չարգիլեն. Եւ Թէ Ճընուվեզ մեռ- Նի անտխաթիկ[7], Նայ մեր գործաւորքն յիր իրքն ձեռնա- մուխ չլինին, ապայ զիրքն զումինն առնու ու այնէ զինչ սաՀմանն է. Եւ յապուր[8] որ տան ընդ յԱյաս ու ընդ Կու- կլակ, Նայ այսպես լիննայ, որ տան 'ի պրիսիՄն' 'ի յղտայ- բեռն Նոր դրամ քսան ու Հինգ, և 'ի պրիսմէ կտաւն 'ի յղտայբեռն Նոր դրամ քսանուՀինգ, և 'ի լեղակն ու 'ի յա- խայխիրն զարդ 'ի պղպըղեն ու 'ի զընջպլեն ու 'ի պաղղա- մեն, 'ի յայլն 'ի յամենն տան 'ի յղտայբեռն Նոր դրամ քսան ու Հինգ. տան 'ի ջորէբեռն Նոր դրամ տասն և ինն, և 'ի յիշբեռն Նոր դրամ տասն ու վեց. և 'ի պղպեղն ու 'ի զընճպիլն ու պաղղամն 'ի յղտայբեռն, Նոր Դր. քսան. և զինչ իսկի ֆռանկ կտաւ ելնէ՝ Հաստ ու բարակ, ու զինչ իսկի քթան ելնէ Հաստ ու բարակ, Նայ տայ 'ի յղտա- բեռն Նոր դրամ քսան. և այս իրվիս որ յղտայբեռն կու տայ Նոր դրամ քսան, Նայ տայ 'ի ջորեբեռն Նոր դրամ տասն ու Հինգ, և յիշբեռն Նոր դրամ տասն ու երկուք։ Եւ 'ի բամբակն ու 'ի չաքարն ու 'ի սրդիկն ու 'ի մընձանն ու 'ի կլայեկն ու 'ի պղինձն ու 'ի յայլ զինչ իսկի լինի, տայ 'ի յղտայբեռն Նոր դրամ տասնուՀինգ, և 'ի ջորեբեռն Նոր դր. տասն ու երկուք, և իշբեռն Նոր Թ. և 'ի սապոնն յղտայբեռն՝ Նոր տասն, և 'ի ջորեբեռն Նոր դր. ութ. և 'ի յեշն Նոր դր. եւթն. Եւ արդ յայսմ Հետէ և առ յա- պայ 'չունի ոք իշխան: ութիւն 'ի մեր Թագաւորութեանս ամենայն Հնազանդացն ոչ 'ի մեծայմեծացն և ոչ 'ի փո- քունցն մեր Թագաւորական բարձր Հրամանացս Հակա- ռակ կալ, կամ աստուածայպաՀ զումին Ճընուվիզացն՝ ուժ կամ Նեղութիւն առնել, կամ այլ աւելի Հարկ կամ իրաւունս պաՀընջել, այլ այնպես Մնացէ Հաստատուն որպէս Հրամայել ենք։ Վասն որոյ պարգևեցաք զմեր Թա- գաւորական բարձր Հրամանքս և զպատուելի սիգեղս. Եւ վասն առաւել Հաստատութեան ձեռնայգրեցաք մե- րով սովորական բարձր ձեռնագրովս. 'ի Թվականիս Հա- յոց, ՉԼ, ԼԷ, և 'ի փոքր Թուականիս[9] յերկուքն, յամ- սեանս դեկտեմբերի, 'ի ԻԳ. Հաստատուն է կամաւքն Աստուծոյ։ Գրեցաւ արգաՀատութեամբ Հեթում Ջանց- լերին Նուաստ ծառայի Աստուծոյ և Սուրբ արքայիս շնորՀողի սյսմ պարգևիս։... Եւ Ճընուվեզ որ լինի յեր- կիրս բնակութեամբ իր կենալն ու ստանայ Հայրենիք որ լինի 'ի կընկան դեՀաց կամ 'ի մեր Թագաւորութէ- Նես տուրք, ու մեռնի անտխաթիկ ու անժառանգ, Նայ իր ինչքն զարդ 'ի Հայրենեատներոյն[10] դառնայ 'ի զու- մին ձեռք, և Հայրենիքն դառնայ 'ի պարոնութեանն 'ի ձեռքն։...

✠ ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ։

177. Վաւերական ձեռնագիր Բ Լեւոնի.

1 Բաժ կամ իրաւունք գերանաց, կայմից, և այլն։
2 Consul, Console.
3 Վկայք, իրաւագէտք, խորՀրդականք։
4 Կեցցութիւն առնել, վկայել, Հաստատել։
5 Գաւառան իշխանութեան։
6 Թուղթ Տարսոն քաղաք։
7 Առանց կտակի։
8 Բաժ յանցս պաՀակաց։
9 Ոչ գիտեմ զինչ է այս փոքր Թուական. արդեօք գարաղամբ 'ի սկզբանէ իշխանութեան Մեծին Լեւոնի (1187), որոյ շրջանի ար- գարև երկրորդ ամ էր 'ի Թուին Հայոց ՉԼԷ, և Փրկչին 1288։
10 Անշարժ կամ տեղական կալուած։

147․ Որքան վաճառակցութիւն Արեւմտեայց յաւելոյր զօգուտ Հայոց՝ մտերմութեամբ նոցին և նիւթական շահուց, այնքան և գրգռէր զատելութիւն Եգիպտացւոյն. զի խոչ ընդ ակն լինէր յղփացելոյն Աղեքսանդրիոյ՝ նորածին դշխոյն Ծովուն Հայոց, Այաս. զորոյ պայծառութիւն՝ գրեաթէ հանապազ խաւարեցուցիչ համարելով նաւահանգստաց և շահաստանի իւրեանց, բազում անգամ հնարս հնարեցան սուլտանքն՝ կամ խպառ խափանել զայն, կամ մանաւանդ թոյլ տալ բարգաւաճանացն՝ այլ մասնակցիլ շահուցն, դաշամբք և զինու զօրութեամբ։ Զառաջինն փնտուխտար սուլտան (1274-5) 'ի մեծի արշաւանին խանգարեաց և զԱյաս, յորմէ փախուցեալ նաւուք 2000 ոգիք՝ ծովակուր կորեան։ Յետ սակաւուց Քէլաւուն Մանսուր սուլտան՝ յելս 1281 ամի ասպատակ սփռեաց, կամ թոյլ ետ ասպատակել Թուրքմանաց և Քրդաց, խրոխտացեալ ընդ յաղթութիւնն 'ի վերայ Թաթարաց 'ի Հէմս, (30 հոկտ.), որոց նիզակակից էին Հայք. և արդ 'ի գալ ասպատակին՝ խոյս ետուն բնակիչք Այասոյ և զերծան 'ի Բերդն ծովային, զոր ոմն 'ի լատին պատմչաց Նոր բերդ կոչէ յայսմ նուագի[1]. այլ ցամաքն յաւար և յաւեր մատնեցաւ. բայց 'ի դառնալ ասպատակին մեծագոյն եւս աւարաւ՝ 'ի կողմանց Թիլն Համտընոյ, Հայք դարանեալք 'ի կիրճս՝ ոչ միայն զաւարն թափեցին, այլ և զաւարողսն կոտորեալ՝ զկապուտ կողոպուտ զինուց նոցին և զկառափունսն անգերծս՝ ընծայ առ Ապաղա ղան առաքեցին[2]։ Ի նմին ժամանակի լուեալ դաշնակցաց քրիստոնէից զվտանգ քաղաքիս, առաքեալ էին հարիւր ձիաւոր յօգնականութիւն. այլ թէ հասի՞ն 'ի դէպ ժամու կամ գործեցի՞ն ինչ՝ ոչ գիտեմ։ — Յետ քսան ամաց (յ'18 յուլիսի, 1305), ըստ սմբատեան պատմութեան, «Կոտորեցին » զօրքն Հայոց և Պարոնն Հոռոմոց Խազանճուխն (կուսակալ Թաթարաց), զզօրքն Մսրայ՝ 'ի մօտ 'ի յԱյաս, » որ էր թիւ հեծելոյն Մսրայ չորեքտասան հազար այր». ըստ այլոց եօթն հազար։ Զայս արարեալ կրօնաւորելոյն Հեթմոյ Բ, եգիտ փաստս չքմեղութեան, և հաճեցոյց զսուլտանն 'ի պայմանս հաշտութեան։ — Դարձեալ յետ հնգետասան ամաց, 1320, «Եղև չմոր. զի զօրք Մսրայ » աւերեցին զԿիլիկիայս. (և) կոտորեցին զօրքն Հայոց » զզօրսն Մսրայ առաջև Բաղիքարկու? և 'ի սահմանս » Այասու»։ Այլ 'ի նմին ամի յորում մեռաւ արքայն Օշին և թագաւորեաց տղայահասակ որդին Լեւոն Դ, երիցս և չորիցս յարձակեալ էր Եգիպտացւոց յայլեայլ կողմանս աշխարհին Հայոց. և սաստկագոյնս յետ երկուց ամաց (1322) յամսեան ապրիլի, նիզակակցութեամբ և Դիմուրդաշ Թաթարի և Թուրքաց՝ գումարեցան մըրրկօրէն 'ի վերայ Այասոյ, իբրև երեսուն հազար հեծելոց, ըստ գրելոյ Յովհաննու Քահանայապետի[3], և բուռն պաշարմամբ տիրացան Ցամաքային բերդին. իսկ Ծովայնոյն՝ յետ երկար ոգորման և բազում դժուարութեամբ ('ի 23 ապրիլի). զի դղեակն՝ զոր Արաբացի պատմիչք Ատլաղ կոչեն, ըստ նոցա բանից՝ պարիսպս ունէր ըստուարս երեքտասան կանգնաչափ, պղնձեայ և կապարամած դրամբք ամրացեալ։ Յիշատակագիր մի մեր 'ի նմին ամի՝ գրէ վասն սոցա. «Բազում զօրաց եկեալ » յաշխարհս Հայոց, և զՄեծ հռչակաւոր քաղաքն Այիաս » աւերեալ, և հրով այրեալ զբերդն, և զմնացն նաւմեալ » (պեղեալ) փլուցին. և բազում գերիս տարեալ քրիստոնէից, և զայլս սրով սպանեալ[4]». բայց և ոչ սակաւք ոմանք ապրեցան յառաջագոյն զերծեալք 'ի Կիպրոս՝ կիպրացի նաւուք, զորս անյիշաչարութեամբ առաքեալ էր Հենրի թագաւոր, երբեմն բանտարկեալն և նեղեալ 'ի Հայոց։ Շարունակողն Սմբատայ համառօտիւ ասէ. «Պաշարեցին զնա (Այաս) և առին զմինայն[5], և » բազում քրիստոնեայս գերեցին»։ Այլ ժամանակակից յիշատակագիր նոյնպէս համառօտիւ, այլ սաստկագոյն եւս. «Յապրիլն (ամսեան) աւարեաց Մսրայ սուլտանին » զօրքն զԱյասայ մինայն, և զկնի երկոտասան աւուր » զՃզղոր». այսպէս յապաւելով զկարևոր բառն, զոր կարծեմ իմանալ զկղզին, արաբ բառիւ ճէզիրէ։

Մանրապատում եւս առնէ զանցս առման Այասոյ՝ ժամանակակից պատմիչն և թարգման՝ Ներսէս Պալոն, կարևոր բանիւք, թէ և աղաւաղ շարամանութեամբ. «Զկնի մահուան բարեպաշտ թագաւորին Հայոց Օշնի... » Տամուրտաշն բազում հեծելօք, աւելի քան 30,000, և » բազում հետևակօք, այսինքն ամենայն ուրտուչիւն (բանակաւն) իւր, յակամայ և բռնութեամբ՝ 'ի յաշխարհն » Հայոց 'ի Կիլիկիա մտաւ. և բազում աւեր արար, սպանութիւն և աւար, և բազում ջանս եդ՝ եթէ ամրոց ինչ » կարիցէր առնուլ, բայց ոչ կարաց։ Այլ և 'ի նոյն Հայերոյն՝ Թաթարնին բազում պակասութիւն և կորուստ » 'ի յամանս անցս և 'ի կիրճս ընկալան. և եթէ ոչ էր » լեալ զի ասէր Տամուրտաշն, եթէ սիրելաբար և 'ի տեսութիւն եմ եկեալ, և վասն այն զի երկնչէին Հայերն » յայտնի մնասել Թաթարին, թէ չիք՝ զամենայն կոտորել էին և սպառել։ Եւ իբրև ել Տամուրտաշն 'ի Հայոց, » 'ի ձմերայնոյ գոլով, 'ի գարունն մերձակայ՝ ապրիլի էր » քսան, զօրքն սուլտանին Խռ (40,000) հեծեալ։ և այլ » այնչափ հետևակս եկին 'ի նոյն երկիրն Հայոց. և եկեալ 'ի քաղաքն Էգիոյ, որ է Այաս, յերկրորդ օրն՝ » յօր տօնի Սրբոյն Գէորգեայ, 23 ապրիլի, առին զՄինայի բերդն. զի ծովն ցամաքեցաւ և 'ի ներս գնաց. և » Տաճրկնին 'ի ծովէն եկին և կտրեցին զճանապարհն որ » 'ի ներսի բերդն. և 'ի ծովն ոք չկարէր գնալ. և գերեցին » անդ բազում անթիւ անձինք և անբաւ աւար առին. և » ապա նստան սղարելով 'ի վերայ Ներսի բերդին. եղին » բաբան, և զամենայնն 'ի փուլ ածին. և զամենայն դըրունս և զպէչքայարսն? (կամ պէչքնիչքսն)[6] քաղաքին բերեալ՝ կարմունճ կապեցին ընդ ծովն 'ի ներս, » մինչ եկլին մօտ պարսպի բերդին. և նետախորով[7] առ-

1 Castellum Novum ascenderunt in medio mari extructum.

2 Օհսոն, Պատմութիւն Թաթարաց, Գ. 535։

3 Թուղթք Յովհան. ԻԲ, Գիրք Ի, 20 դեկտ. 1322։

4 Յիշատակարան Շարակնոցի։

5 Հրատարակողն (Շահնազար) սխալ իմացեալ է զմինայն՝ որ է նաւահանգիստ, և տպագրեալ է զմին այն, իբրու զԱյաս միայն. նոյնպէս միամտութեամբ թարգմանեալ է և Տիւլորիէ։

6 Այլազգի բառդ կարծեմ նշանակէ զփեղկս պատուհանից կամ զերդիս և զաղխս, ըստ դանի և փէնճէրէ բառից։

7 Անշուշտ ատրաշէկ նետս և շամփուրս արձակելով։

» նէին զմարդիկն՝ որ փայլէին 'ի դրանն կողմն դղեկին. » որով յամենայն կողմանց սաստկացաւ մարտն։ — Այլ » և Թագաւորն Կիպրոսի առաքեաց խալէս ինն՝ յօգ» նութիւն քրիստոնէից, որք կորստեան եղեն պատճառ » քան փրկութեան. քանզի ամենայն ոք որ փախչէին » 'ի բերդէն, ընդունէին և առնուին, և զամենայն » ինչս ևս որ լինէր իւր՝ զի ոչ ոք մնաց 'ի բերդն 'ի » քաղաքացեացն. այլ իւրեանց ընչիւքն գնացին 'ի » խալէքն։ Իբր այս լինէր՝ 'ի գիշերի հուր արկին 'ի » բերդն, և թողեալ 'ի բաց գնացին ընդ ծովն։ Այսպէս » կորեաւ Այաս՝ երկրքին բերդովն իւր, գերեալ 'ի Տաճ» կացն։ — Զայս աղէտ կսկծանաց՝ իբրև լսէր Պապն » Յօհաննէս, առաքեաց 30,000 ֆլորինս ոսկոյ, զի դար» ձեալ շինիցեն զբերդն Այասոյ. որ և առեալ զայն Հա» յոց, և բազում յոյժ յաւելին 'ի վերայ, և շինեցին ըզ» բերդսն զայնոսիկ՝ առաւել յոյժ ամրագոյն և բարձրա» գոյն. և եկաց իբր զամս վեշտասան. և ապա (1340)... » դարձեալ եկին Տաճկնին՝ մեծաւ սաստիւ, զի զամե» նայն Հայք առցեն։ Որ և երկուցեալ Հայերոյն՝ կամաւ » ետուն զԱյաս, և զայլ ամենայն բերդս և զերկիրն » որ (էր) իւրեանց կողմէ Ջահուն գետոյն »։ — Յաւելու և այլուր պատմիչս՝ վասն քահանայապետական տուրիցն, եթէ «Նոյն Պապս Յոհաննէս ինքն և իւր գոլէճ » կարտինալքն խարաճս արարին յինքեանս. զի կարտի» նալքն ամենայն ետուն 12,000 ֆլօրին, և Պապն 18,000, » որ լինէր 30,000 ֆլօրին. զոր յղեաց սա 'ի շինութիւն » Այասու։ Զոր և արարին իսկ Հայերն. զի շինեցին ըզ» բերդն Այասու ամրագոյն քան զառաջինն և գեղե» ցիկ »։ Յայլում օրինակի պատմութեանս՝ որոշակի ևս ասի. « Յապրիլի 23 առին զԲերդն մինային (Նաւահան» գստին), և զքաղաքն Այաս, և գերեցին անթիւ ան» ձինք. և զկնի 23 աւուր՝ առին զԲերդն ծովին, զոր 'ի » բաց թողեալ էին քրիստոնեայքն և գնացեալ։ Իսկ ի» րրև այս լինէր և զկնի երկու ամի հաշտութիւն արարին » Հայերն ընդ Տաճիկսն »։

Ի նոյն աւուրս գրելով Բարսղի վարդապետի 'ի Մաշկեւոր վանս՝ զՄեկնութիւն աւետարանին Մարկոսի, ուրեք ուրեք յեռու 'ի ճառսն զյիշատակ աղետիցն, այլ ընդ նմին և քաջալերս. յորս նշանաւոր է այս բան, թէ և յիշեալն 'ի նմին տեղիք ոչ քաջ ծանօթք. « Ուր այնքան » բազմութիւնք հաւատացելոց սպանեան յանհաւատից, » տե՛ս՝ թէ ո՛րքան տեղիքն այն հաճոյ և սիրելի է Քրիս» տոսի. ուստի յայտ է թէ Պուրճքն Եղիային և Ճան» կալէսին՝ չեն փոքր քան զեկեղեցին Նիկոմիդայւոց, » ուր երկու բիւրքն վասն Քրիստոսի հրով այրեցան. այլ » և մեծ և զարմանալի ». մարթ էր կարծել սխալմամբ Եղիայ գրել զԷնգիայն. քանզի և 'ի նմին բանի գրիչն, ըստ մերոյս օրինակի, փոխանակ երկու բիւրք գրելոյ գրեալ է երկու բևրքն. Նաև առաջին յիշատակագիրն՝ յետ գրելոյ զաւերն և զայրելն Եգիասայ, յիշէ զմիւսանգամ ասպատակ Թուրքին 'ի Մլուննն (Մոլեւոն) բովանդակ, որ « և հրով այրեաց երկու պուրճ, և բազում քրիստոնեայք » հրով կատարեցան... »։ Թողլով ընդ երկբայութեամբ զտեղի երկոցուն նորանուն բրգանցս՝ ընդ Այաս և ընդ Մլուն, արգահատեսցուք տակաւին 'ի վերայ այրիացեալ և որբացեալ դշխոյի Ծովուս Հայոց, յուսադրական բանիւք նորին Բարսղի. « Յորժամ առաւ, ա» սէ, Այաս, և կարծեցաք թէ երկիրս աւերելոց է (խա» պառ), և ամենեքեան սատակելոց եմք, ո՛չ առաւել » տրտմէաք ». և յառաջելով յերկաւորութեանն, որպէս թուի յետ տարևոր ժամանակի՝ արիագոյն ոգւով գրէ. « Այժմ գաւառս Կիլիկիոյ գեղեցիկ և պայծառ երևի » նեղութեամբքն... մանաւանդ տեղիքն այն՝ ուր կոտո» րւածք և սպանութիւնքն գործեցաւ. և բուրէ 'ի նո» ցանէ այնքան զարմանալի հոտ, մինչ զի Տէրն և արա» րիչն ամենայնի՝ հոտոտեցաւ 'ի հոտ անուշութեան »։ — Վարդապետական մխիթարանք. այլ չէր մարթ գրել զայդոսիկ՝ եթէ ոչ տեսանէր 'ի ծիրանաներկեալ կապուտակային ալեաց անտի վերականգնել զցանկալին Այաս. որում ոչ հակառակեցաւ և ինքն յաղթողն և աւերածու սուլտանն Նասիր. կամ գորովեալ, կամ զապագայ շահ իւր նկատելով, և կամ ակն ածեալ 'ի վրէժխնդրութենէ նոցին իսկ Հայոց. յորոց գունդ մի վեցհարիւր արանց երիցս մարտուցեալ 'ի միում աւուր՝ այնքան 'ի նեղ արկ զբազմութիւն զօրացն, մինչև հարկ լինել կոչել յօգնութիւն զաւերիչս բերդիցն Այասու. և այլ գունդ մի կորովի երկերիւր արանց դարանեալ 'ի կիրճս լերանց՝ զդէմ կալաւ ութևտասն հազար հեծելոց, և կոտորեաց իբրև վեց հազար յայլազգեացն, ըստ գրելոյ Յովհաննու Պապի 'ի կոնդակին, որով քաջալեր և յորդոր կարդայր քրիստոնէից յօգնութիւն Հայոց։ Ապա հաւանեցաւ սուլտանն ոչ միայն թոյլ տալ վերաշինութեան Այասոյ՝ այլ և սատարել իւրովք գանձուք. բայց պայման եդեալ դաշամբք՝ զի մի՛ շինեսցի Բերդն ծովային, և զի զատ 'ի տարևոր հարկէն՝ զոր արկ 'ի վերայ աշխարհին (1,200,000 դրամ կամ 50,000 ոսկի ֆլորին), հատուցեն և 100,000 դրամ վասն Այասոյ. իսկ ըստ այլոց՝ զկէս բաժի Այասոյ պահանջէր։ Եթէ զնոյն բան ցուցանեն երկոքին պահանջքն՝ ապա 200,000 դրամ գումարի տարևոր հաս բաժիցն Այասու, որ ըստ նիւթական արժողութեան դրամոյն չէ մեծ ինչ, այլ ըստ յարգի ոսկւոյ ժամանակին թերևս իցէ իբր 350 կամ 400,000 ֆրանգ. այլ ինձ թուի թէ առաւել յոյժ էին արքունի հասք բաժիցն այնոցիկ, ըստ յառաջագոյն ցուցելոյս (յէջ 386)։ — Յորդոր Քահանայապետին Հռովմայ և մխիթարութիւն զոր գրեաց ուրոյն առ նորընծայ Թագաւորն Լեւոն, առ Պայլն Օշին, առ ուխտ եկեղեցւոյն և առ ժողովուրդն, և նպաստ դրամական, (զի պատուիրեաց նուիրակաց իւրոց առնուլ վասն նոցա փոխ 'ի Պարտի ընկերութենէ ֆլորենտեայց, 30,000 ոսկի, և զմասն մի ծախել 'ի շինութիւն Ծովային բերդին Այասոյ, յոր թելադրէր և վենետկեցին Սանուտոյ բարեկամն Հայոց[1],) և խոստումն խաչակրութեան կամ հակա-

[1] Բազում թուղթք են Սանուտոյի յորդորականք առ Քահանայապետն, առ ծիրանաւորս նորին և այլ ազգ եկեղեցականս և իշխանս աշխարհիկս, յօժանդակութիւն Հայոց, որով և համօրէն քրիստոնէից արևելեայց, որոց խորհէին խաչակրութեամբ 'ի թիկունս հասանել. և քանզի, ասէր առ ծիրանաւորսն, 'ի դէպս դժուարինս նախ զմեծագոյն վտանգաց պատշաճ է զառաջս առնուլ, արժան է ուրեմն նախ քան զԱնգս խաչակրաց յազատութիւն Սրբոց տեղեաց, օգնել Հայոց նեղելոց ծանր ծանր հարկօք, կարգելով զգուշութիւն



Կոստանդին Բ օգնութեամբ Ասպետաց Հռոդոսի Թափէ զԱյաս յԵգիպտացւոց․

Նոցին՝ յամին 1335 կոտորեցին զմչակս և զստրուկս այլս ենս որ 'ի սահմանս իւրեանց [1]. և աստի առաւել ևս գրգռեալ Եգիպտացւոցն՝ ասէին ցՀայս. « Ձեր Այասցիքն զխատմին և զդանրըշմներն սպանել են. ամ մենք » զքէնն 'ի ձեզ պիտի հանենք. և ամենքս 'ի դող կանք ». կամ, « Այասու խատմի քրիստոնէքն՝ զԱյասու խատմի » Տաճկնին են կոտրել. ամ մենք զձեզ պիտի սպանէնք ». և համբաւ հնչէր, թէ՝ « Հարիւր հազար Տաճիկ կու երթայ 'ի Սիս [2] »։ Եւ արդարև 'ի նմին ամի յամսեան օգոստոսի՝ յորում խոստացեալ էր Փիլիպպոս թագաւոր Փռանկաց 'ի չու անկանել ընդդէմ Եգիպտացւոց, սոքա մտին 'ի Հայս, և նուաճեցին գրեաթէ զամենայն քաղաքս. և ամս երկու անդադար նեղէին, մինչ թագաւորն Լեւոն պնդադեսպանս առաքեալ առ սուլտանն ջանաձնար լինէր թափել զերկիրն, տալով նմա տուրս և հարկս. այլ ոչ գիջանէր Եգիպտացին, սադրեալ յաւէտ յամիրայէն Հալպայ՝ յառաջնորդէ զօրաց իւրոց. մինչև անհնարին թաղծութեամբ « անճարկեցաւ (Լեւոն, » ըստ բանից թղթագրի իւրոյ Վասլի), ու կատարեաց » զսուլտանին կամքն. ու երետ՝ զոր կտրէր Ջահան » (զամենայն արևելակողմն գետոյն) բերդերովն, ու զերկիրն, ու զպանծալին այս Այաս, զոր բազում ծախիւք » շինեալ էր »։ Այս եղև յամի 1337 կամ 1338. և անկան դաչամբք 'ի ձեռն Եգիպտացւոց՝ երկոքին բերդք Այասոյ, և ընդ նոսին՝ Հարուն, Կովառա, Սարուանդիքար, Համուս և կոչեցեալն Նուճայմաւ։ Ժամանակակից պատմիչն Ներսէս Պալոն՝ գրէ. « Զօրքն սուլտանին » Եգիպտոսի և բռնաւոր ամիրայն որ կոչի Մէլէք Ցումար, հասեալք 'ի Կիլիկիա վեշտասան հազարաք զօրաց » հեծելոց, և նստեալ մերձ առ քաղաքին Էգիայ, որ է » Այաս, և ոչ գնաց մինչև ետուն 'ի նա զքաղաքն Այասոյ, և ևս զամենայն երկիրն՝ յայնկոյս գետոյն Ջահոյն » կոչեալ, զոր էր 'ի կողմանէ նոյն Տաճկացն. որ էրն » դղեակս, պուրձս և ամրոցս չորեքտասան ամենայն իւրեանց սիննուօքն, ետուն 'ի Տաճիկսն պայմանաւ և կամաց »։ Նոր տարէգիրն՝ 16 դղեակս և ամրոցս ասէ։ — Լռեցին յայնմ հետէ յիշատակք և երթևեկք վաճառականաց արևմտեայց 'ի շահաստանն համաշխարհի՝ Այաս, յորմէ խոյս տուեալ էին չտապաւ. մինչև թողուլ Վենետաց զհաստուցումն պարտուց իւրեանց առ եգիպտացի վաճառականս, (յորոց գնեալ էին բամբակ), և մուրհակքն միայն 'ի բաժտանն. ստիպեցաւ թագաւորն Լեւոն հատուցանել՝ առաւելաւ հանդերձ, և 'ի բաց արձակել զվաճառականսն այլազգիս, և գրել 'ի Վենետիկ (1 մարտի 1341), առ Դուքսն, առաքելով զցուցակ հաշուին և զպահանջից իւրոց, որ եղև 16,000 թագուորին։

Բայց Այաս՝ որպէս միշապ բունեալ 'ի ջուրս՝ թուէր տակաւին եռալ զեռալ ճգնել ճողոպրել 'ի ձեռաց ճնշողայն [3]. ընդ որոց յիշի դարձեալ մաքառել Հայոց՝ յամս 1341–2. յորում ժամանակի սրտաբեկ մեռաւ Լեւոն յերիտասարդական տիս հասակի, և հակառակութիւնք առևմտեայ պետութեանց ընդ միմեանս, և խնդիրք կրօնականք յուզեալք ընդ Հռովմ և ընդ Սիս, ջլատեցին զնչխարեալ զօրութիւն մերոցս։ Սակայն հուսկ անգամ մի ևս ամբարձ Այաս զհայապատակ գլուխն 'ի բազմածուփ ալեաց անտի, ոչ գիտեմ որպէս և երբ, և էր ազատ յառաջին ամս թագաւորութեան Կոստանդեայ Բ. այլ յետ ոչ բազմաց Կիւնտիւզ տոհմն Թուրքմանաց՝ որ արածէր 'ի մերձաւոր սահմանսն, մատնեաց վերստին 'ի ձեռս Եգիպտացւոց. իսկ Կոստանդին փութով թափեաց 'ի նոցանէ օգնութեամբ ասպետացն Հռոդացւոց և կարգապետի նոցին Աստուածատրոյ Կոզոնի (1347)։ Հնչեաց համբաւն




178. Դրամ Աստ. Կոզոնի կարգապետի Ասպետաց Եդմի.

յարևմուտս. ուր և յետ հինգ հարիւր ամաց՝ նորոգեցաւ օրինակաւ իւրք. զի կամեցեալ Լուդովիկ Փիլիպպոսի թագաւորի Փռանկաց ճոխացուցանել զթանգարան պատկերաց արքունի ապարանիցն Վերսայլի, և յաւէտ զխաչակրաց սրահին, զատ յայլոց ետ նկարել, յամի 1844, և զայս դէպս ազատութեան Այասոյ՝ օգնութեամբ Ասպետացն Հռոդոսի (կամ Երուսաղեմի), որպէս և տեսանի յառաջիկայ լուսատիպ օրինակիդ. նկարիչն Հանրի տը Լապորտ (Henri Delaborde) կենդանի գոլով և 'ի ժամու գրութեանս, հարցեալ՝ ծանոյց զպատճառսն, ցաւելով զի չեգիտ յայնժամ զոք հմուտ հայկական տարազուց՝ առ 'ի ճշգրիտ կերպարանել զթագաւորն Հայոց, որ տեսանի սպիտակազգեստ բազմեալ 'ի գահոյս, և Եգիպտացիք առ ոտս նորա՝ մատուցանելով զբանալիս քաղաքին Այասոյ [4], և քարտուղար թագաւորին առ պատուանդանի գահուն։

Ո'րքան ևս ժամանակս մնաց յիշխանութեան Հայոց, կամ յորում ամի Տիրոսս այս հայկական մատնեցաւ 'ի սպառ 'ի գերութիւն, ոչ է մեզ յայտ. այլ մինչև ցյետին ամս անուանեալ տէրութեան Հայոց, ցյետին շունչ՝ որպէս բանիս կարգ է ասել, խոյց անողջանալի էր կորուստ

1 Խարէձ՝ Տաճիկ ասէ յիշատակագիրն։

2 Զայսոսիկ գրէր 'ի նմին ժամանակի՝ արեղայ ոմն յԵրուսաղէմ։

3 Հաւաքողն տարեգրութեանց՝ Մաղաքիա Դպիր, զնոյն դէպս կրկին գրելով ըստ այլեայլ պատմչաց, թուեցուցանէ և յամի 1340 միանգամ ևս առեալ Եգիպտացւոց զԱյաս, սակայն չփաթէ ընդ առմանն յամի 1337։

4 Հարկ է ինձ երախտեաց ծանուցանել աստանօր, զի 'ի կամել խմաւմ հայթհայթել զորպիսի և է օրինակ պատկերիս, զգացեալ երբեմն աշակերտակին ինձ Պ. ՑԱԿՈՎԲ ՏԱՄԱՑ, ազնիւ մտօք և ճարտար մատամբք նկարեալ համահաւասար նախօրինակին, ամենայն մասամբք և երանգօք՝ ընծայեաց, և տուաւ աստ ('ի Վենետիկ) տպագրել։ Զափ մեծութեան նկարին է 0,80 Զ. ընդ լայնն, 0,72 'ի բարձրութիւն։ Ի դիւանս թանգարանին Վերսայլի այսպէս գրեալ է վասն պատկերիս. Le royaume chrétien d' Arménie était prêt à succomber sous l' invasion des Sarrasins qui l' occupaient en grande partie. Le roi Constant avait envoyé demander du secours en Europe : le Grand Maitre Dieudonné de Gozon répondit à son appel. Il envoya les troupes de la Religion en Arménie, et les Sarrasins furent entièrement chasses de ce pays. — *Tableau par Henri Delaborde, Membre de l' Institut, Secrétaire perpétuel.*

Նորին. մինչև Թագաւորն Հայոց կամ իշխանք՝ յաշնայնի 1367 ամին հրեշտակ առաքեալ առ Պետրոս Ա Թագաւոր Կիպրոսի՝ ժամադիր եղեն յԱյաս, գալ տիրանալ բերդին, որ տակաւին չէն էր. և ըստ կենսագրի վարուց Կիպրացւոյն,

Alayas est un chastiaus
Qui est fors et puissans et biaus.
Ville y a et siet sour la mer;
Et si vous vueil bien affermer
Qu' ads Ermins a fait maint ahan.
C' est l' eritage dou Soudan,
Et si est assis en la marche
D' Ermenie, et aux Ermins marche.

Եկեալ Պետրոսի նաւուք՝ եւտես 'ի ցամաքի հինգ հազար հեծեալս և բազմութիւն հետևակաց զօրաց սուլտանին. ընդ որս մարտուցեալ քաջութեամբ՝ ել 'ի ցամաք և փախեաց հարուստ մի ևս. այլ Թշնամեացն ապաստանեալ 'ի վիմուտս՝ անյողդողդ մնային, և վտանգէին յոյժ զհեծեալս Թագաւորին. յայնժամ 'ի բաց Թողեալ զերիվարս,



179. Դրամ Պետրոսի Ա, թագաւորի Կիպրոսի, յանուն Հայոց [1].

և հետևակօք յարձակեալ՝ արար 'ի նոսա կոտորած մեծ, և դարձաւ 'ի վերայ բերդին. բայց հզօր ընդդիմութիւն գտեալ, և զի խոնջեալ ևս էին զօրք իւր, և պաշար նուազեալ, ձմեռն մօտաւոր, և օգնութիւն 'ի Հայոց ոչ երևէր, կացեալ անդ աւուրս ութ, և զքաղաքն յաւարի առեալ՝ դարձաւ յետս. բայց իբրև յաղթող կամ իրաւացի 'ի միջնորդել Վենետաց և Գենուացւոց վասն հաշտութեան ընդ Եգիպտացւոց, պահանջէր 'ի սոցանէ զծախս արշաւանին յԱյաս և 'ի Տրիպօլիս (1368)։ Յաջորդ նորա և համանուն Պետրոս Բ, Թուի յաջողեալ յետ իբր տասն ամաց, նուաճել միանգամ ևս զԱյաս յանուն Հայոց կամ քրիստոնէից. քանզի 'ի վերայ տապանի քարտուղարի իւրոյ՝ Փիլիպպոսի Մէզիէր (Philippe de Maizières) կոչեցելոյ, (զոր Լևոն Վերջին կտակակատար իւր կարգեաց), գրեալ կայր և այս բան (յեկեղեցւոջ Կելեստինեանց 'ի Բարիզ, ուր և Լևոն Թաղեցաւ). «Սա մեծաւ քաջութեամբ և յանդուգն ձեռնարկութեամբ կալաւ մարտիւ՝ զատ յայլոց քաղաքաց՝ և զԱյաս 'ի Հայս». Print par bataille et à ses frais les cités d'Alexandrie en Egypte, Tripoli en Surie, Layas en Arménie, Sathalie en Turquie, etc. եթէ ոչ շփոթիցէ ընդ Նրկրորդին՝ զգործս Պետրոսի Առաջնոյ։

148. Այս վերջին յիշատակ է Այասոյ 'ի ձեռս քրիստոնէից. բայց հռչակ նորին՝ որպէս զմի 'ի գերագունից և զարմանաւքանչ քաղաքաց արևելից և ծովային շահաստանաց, մնաց ընդ երկար և աւանդօրէն՝ 'ի միտս և 'ի գնորս իսկ արևմտեայց, և 'ի ստեղծաբանութիւնս քերդողաց նոցին։ Առաջին արձակաբան հեղինակ Իտալացւոց՝ Պոգգաչչիոյ, ժամանակակից յետին Թագաւորաց մերոց (ծ. 1318 † 1365), զերկուս 'ի հռչակեալ հարիւրոց վիպասանութեանցն անձինս՝ յԱյասոյ ընտրէ կամ ստեղծանէ. զմին՝ Թորոս անուն (Teodoro) մանուկ՝ գերեալ 'ի Գենուացւոց, կարծելով Թուրք, և վաճառեալ Ամերիկոսի սիկիլիացւոյ, որ մկրտեալ անուանէ զնա Պետրոս. և վասն սուփելոյ նորա 'ի դուստր իւր Վիոլանդէ՝ դատապարտէ 'ի մահ. դէպ լինի յայնմ ժամանակի դեսպանաց Հայոց Թագաւորին յերթալն 'ի Հռովմ՝ անցանել ընդ Դրապանի քաղաք Սիկիլիոյ, ուր դէպքս լինին, և միոյ 'ի նոցանէ փինէոս անուն (Fineo) ճանաչել զԹորոս, զի որդի իւր էր, և ազատել, և հաւանութեամբ Ամերիկոսի փեսայացուցանել զնա 'ի Վիոլանդէ, և ապա տանել բերդանաւուք յԱյաս [2], ուր և կեան խաղաղութեամբ։ Ծանօթարարք հեղինակին ստոյգ համարին զպատճառս վիպին, այլ ժամանակն նշանակեալ 'ի հեղինակէն անճահ է. զի ասէ յաւուրս Գուլիելմոսի Բարւոյ Թագաւորի Սիկիլիոյ հանդիպեալ, մինչ չև ևս էր Այաս շինեալ 'ի Հայոց։ — Ի միւսում վիպի ստեղծանէ զՄելիսոս (Melisso) ոմն ազնուական պատանի Այացցի, (della città di Lajazzo, onde egli era e dove egli abitava), որ բազում ծախուք և առատ սեղանով մեծարէր զհիւրս, և ոչ լինէր սիրելի, վասն որոյ գնայ յԵրուսաղէմ հարցանել զՍողոմոն!. և նա ասէ. Սիրեա. քանզի ոչ առ սիրոյ՝ այլ առ հպարտութեան առնէր նա զծախսն։ — Վերոյիշեալն Փիլիպպոս Մէզիէր՝ որ և մատենագիր, 'ի վիպասանութեան իւրում կոչեցելոյ Երազ ծերոյ Պանդխտի (Songe du Vieil Pelerin), յիշէ զԱյաս՝ քաղաք մեծ կոչելով. La grant cité de Leas en Arménie. — Արիոստոյ (Ariosto) մեծահռչակ քերդող Իտալացւոց (ծ. 1474 † 1533), զքաջազունս իւր տանի երբեմն յԱյաս, որպէս զԱկուիլանտ.

A Tortosa da Tripoli, e alla Lizza,
E al golfo di Lajazzo il camin drizza.

և 'ի դարձի նորին այլովք ընկերօք՝ յիշէ տակաւին զկըրկին բերդս Այասոյ 'ի զգուշութիւն նաւահանգստին.

Nel Golfo di Lajazzo in ver Soria
Sopra una gran città si trovò sorto,
E sì vicino al lito, che scopria
L'*uno* e l'*altro castel che serra il porto.*

այլ Թողումք քերդողին զանհեդեդ կեղծիսն՝ յափունս տեղւոյն դեգերել մարդադաւ կանանց։ — Քերդողահայրն Անգղիացւոց որ և ժամանակակից յետին Թագաւորաց մերոց (ծ. 1328 † 1400), հաւանօրէն և տեսող

1 Ցամս անիշխանութեան՝ յետ մահուան Բ Կոստանդնի՝ հրաւիրեցին Հայք զՊետրոս Ա, քաջայաղթ Թագաւոր Կիպրոսի՝ առնուլ և զԹագ Հայոց. որոյ հաւաստիս ընծայէ դրամս այս, հատեալ թերևս յետ կիսոյ 1368 ամի. ինքն սպանաւ յ'17 յանուարի, 1369։

2 Montati in galea, seco ne menò a Layazzo, dove con riposo e con pace de' due amanti, quanto la vita loro durò, dimorarono. — Boccaccio.

Լեւոնի Չ 'ի Լոնտոն, զվիպասանեալն իւր Սեաւ Ասպետ՝ նոյնպէս տանի յԱտալիա և յԱյաս. At Lejes was he and ot Satalie[1]. — Շատասցին այսորքիկ 'ի վկայութիւն մեծատարած և խորարմատ համբաւոյն Այասոյ, յորմէ հետեւի և ազգ ազգ յեղյեղումն անուան նորին, 'ի լատինն՝ Lajacium, Ajacium, Glacia, Layaz, Alleas, յիտալականն՝ Ajazzo և յաճախագոյն Lajazzo, այլ և Lagiazza կամ La-Giazza, կամ սոսկ Giazza, Lajaza, կամ La Jaza, Lajozo, Jazza, La Glaza. 'ի փռանկ և յանգղիացի գիրս՝ Layas, Leyas, Leas, Leyes, և այլն: Սովիմբ 'ի դէպ է գուշակել, կամ լաւ ևս ասել՝ յիշել, զի ոչ վաճառականաց միայն, այլ և ամենայն դասու մարդկան նաւամատոյց էր Այաս 'ի միջին դարս. և պէսպէս դիտմամբ՝ նաւորդք և ուղևորք յաճախէին անդ, որպէս թէ ոչ այլ ուրեք 'ի ժամանակի անդորրութեան աշխարհին. թերևս և ըստ այժմուս ախորժակաց՝ վայրաքննինք և զբօսասէրք ոմանք բնակէին անդանօր՝ յայլ ինչ դեգերելով քան 'ի տուրևառ: — Մի 'ի նշանաւորացն է երանելին Ռայմոնտ Լուլլիոյ փիլիսոփայ, տարականն հանճար, որ փոխանակ զինուց՝ առաջարկէր և հնարէր աստուածաբանութեամբ նուաճել զանհաւատսն և զհակառակորդս քրիստոնէից, և քարկոծեալ 'ի նոցանէ մեռաւ 'ի Տունիս (1325). սա 'ի սկիզբն 1301 ամի եկն յԱյաս, լուեալ զգալուստ Ղազան ղանի, և անդ գրեաց զգիրսն Հաւատալեաց յԱստուած, (De iis quæ homo de Deo debet credere). այլ վասն եղանակին խստութեան և մանաւանդ վասն կարի զբաղեալս տեսանելոյ զՀայս՝ 'ի հոգս քաղաքականս, մեկնեցաւ անտի: — Իսկ 'ի մերայոցս՝ թերևս մի 'ի յետին յիշատակողաց Այասոյ, թէ և խառնակ գիտութեամբ, միանգամայն և հնագոյն յիշատակի նորուն աւանդող, է Գրիմեցին Յակոբ, 'ի կէս ԺԵ դարու, որ գրէ 'ի տօմարական մեկնութիւնսն. « Հսկայ » մի Հերակլէս անուն՝ զամենայն գծովդ Ովկիանոս » նաւարկութեամբ յուզեալ, և գտեալ զվտակն՝ որ գայր » յարևմտից կողմանէ գետօրէն, և գայր մինչ յԱյաս և » յԱյասու(լու)խն և 'ի Նիկիա, և շրջան առնու և յերկուս » բաժանի », և այլն:

Հարիւր ամաւ զկնի վերջին հայկական դիպաց Այասոյ, այն է զալստեան Պետրոսի Ա (1367), Զիւլգատրեանն Շահ-Սուար՝ ընդ այլոց քաղաքաց և բերդորէից՝ նուաճեաց ընդ ձեռամբ իւրով « և զՏովմահայեաց քաղաքն « Այաս », որպէս ասէ յետին Հայ յիշատակագիր տեղւոյս: Յետ սակաւ ամաց, 1473, Վենետկեցիք դաշնակցեալք Խարամանեանց և Պարսից, ընդ այլոց ծովեզերեայց Կիլիկիոյ՝ տիրեցին գամ մի և Այասոյ. զի գրէ ոմն 'ի գլխաւորաց նաւատորմի նոցին (De Luca da Molin), 'ի նուաճելն զՍիկոյ բերդն, զպահապանսն Եէնիչէրիս ոգիս հարիւր և յիսուն՝ փոխադրեալ այսր յԱյաս. այլ Օսմանեանց յաղթող գտեալ 'ի վերայ Պարսից՝ մխեցան և 'ի Կիլիկիա, և ընդ այլոց տեղեաց առին և զԱյաս. զորոյ և զբերդն՝ զօրապետն Ալի փաշա Պէկլէրպէկի Բումէլիոյ՝ ետ նորոգել. զի՝ որպէս թուի, յառաջ քան զսակաւ ինչ ամս խանգարեալ էր այլ զօրավար՝ 'ի կռուելն ընդ Խարամանեանց: — Ի դիւանս Վենետկոյ և 'ի հրամանս Ծերակուտի նորին՝ տակաւին յառաջին կէս ԺԶ դարու յիշի Այաս (La Yaza) իբրև չէն տեղի և կողմն ծովու, ընդ որ պատուիրէր կամ վճիռ գրէր երթալ կամ չերթալ նաւուց Հասարակապետութեանն[2]: — Ի նմին ժամանակի, յամի 1510, սուլտանն Եգիպտոսի գրէր առ Լուդովիկ ԺԲ արքայ Փռանկաց, գանգատելով զասպետաց Հռոդոսի (կամ Երուսաղեմի), զի յարձակեալ 'ի վերայ նաւաստեաց իւրոց և վաճառականաց՝ զորս առաքեալ էր 'ի Ծոցն Այասոյ՝ հատանել բերել փայտս, ըսպանեալ և կողոպտեալ էին զնոսա. վասն որոյ և ինքն հրամայեաց կողոպտել յԵգիպտոս զինչս քրիստոնէից (500,000 տուկատ). կամէր աւերել և զվանորայս Երուսաղեմի, և զՍ. Գերեզմանն. այլ զիջեալ յաղաչանս գունցի նորին՝ մնայր գալստեան դեսպանի և իրաւախոհ լինել: — Սուլդան Սիւլէյման վերստին նուաճող կողմանցս (յետ 1522 թուականի), թուի յաւելեալ 'ի նորոգութիւնս տեղւոյն, զի կանգնեաց և բուրգն կամ աշտարակ մի ութանկիւնի յարևմտեան կողմն քաղաքին առ ծովեզերին, որ կայ և կրէ ցարդ զարաբերէն արձանագիր նորին թերատ.

امر بعمارة هذه القلعة التصقة السلطان
سليمان بن السلطان سليم خان سنت ثلا...

Յետ անկանելոյ Այասոյ ընդ այսպիսի հզօր ձեռամբ և պետութեամբ, հանգոյն այլոց ծովեզերեայցն ընկերաց, չմնայր նմա այլ ինչ՝ բայց հնանալ և ամայանալ, և առնուլ զկերպարան՝ յոր տեսաք զնա 'ի սկզբան տեղագրութեանս, և որ ամ ըստ ամէ առաւել ևս կորուսէ զնշխարեալ շնորհսն՝ երբեմն դշխոյապէս տարածեալս 'ի վերայ Ծոցոյն Հայոց, և յարակիրթ տորմղաւ նաւուց՝ հասուցեալս յափունս աշխարհաց հեռաւորաց:

Ի պատմութեան մերում, քանզի արքունի կալուած էր Այաս, հարկաւ և ոչ յիշին այլ տեարք կամ իշխանք նորին. իսկ յառանձին քաղաքացեաց՝ սակաւք ոմանք, որպէս Նիկողոս յամի 1274, յորոյ տան յիշեցաք բնակեալ զբազումս 'ի Գենուացի վաճառականաց. — Եդուարդ Այասցի դեսպան Օշնի 'ի Կիպրոս, յամի 1311: — Զայսու ժամանակաւ (1310) յիշին յԱյաս ապարանք Յովհաննու ուրումն de Spagu կոչեցելոյ յարևմտեայց, յորոց թուի լինել և ինքն, յետ երկար արգելանաց թագաւորին Կիպրոսի Բ Ենրիկոսի՝ 'ի Հայս, յորժամ սպանաւ եղբայր նորա բռնակալ (Ամաւրի), և ուր ուրեմն զիջան Հայք արձակել զարգելականն, պայմանեալ երկուստեք՝ զի 'ի նմին ժամու ելցէ նա 'ի նաւահանգստէն Այասոյ, յորում՝ Զապլուն քոյրն Օշնի արքայի և կին սպանելոյն՝ մտցէ յԱյաս, 'ի յիշեալ ապարանսդ, և կացցէ անդ ցմեկնիլ թագաւորին. և այնպէս եղև. և թէպէտ անհրահանգք ոմանք կամեցան խարդաւանել զԿիպրացին 'ի ծովու, այլ նա աճապարեալ ել 'ի նաւս իւր և հեռա-

1 Քերդողն կոչի Չօսըր, CHAUCER, քերդուածն՝ The Black Knight.

2 Quelli che condurranno robbe in questa nostra città di la Soria, intendendo da La Yaza, Zaffo, fino a Gazara inclusa, etc. — *Cottimo di Damasco*, anno 1522. (Օրէնք Դամասկացի վաճառականաց):

ցաւ: — Ընդ գուռզ իշխանուհւոյս՝ դստեր Լեւոնի Բ, յիշեսցի մեծոգի երախտաւորն այն Ֆիմի՝ կին Վահրամայ, զորոյ չկարացի ստուգել զժամանակն, թէ և աներկբայ է յելս ԺԳ դարուն կամ 'ի սկիզբն ԺԴին լինել, որ գրէր 'ի կուսն լամբրունեան աւետարանին, 'ի դառնութեան ժամանակին աւարումն լեալ Լամբրուն բերդի և բերումն սրբոյ աւետարանին յԱյաս քաղաք. և թէ, «Նայ ես Ֆիմիս վասն սիրոյն Քրիստոսի գնեցի » զսուրբ աւետարանս՝ յիշատակ հոգւոյ իմոյ և ծնողաց » իմոց». և մաղթէ յաղօթս յիշել զինքն և զմայր Հռաւփսիմէ. յաւելու 'ի թելադրութիւն տիկնոջն՝ և գրողն Յովսէփ դպրիկ, թէ այս «Վերջի յիշատակարանս գրե» ցաւ հրամանաւ... Տեառն մեր Տէր Սիմէոնիս. և քա» հանայք որ աստ հանդիպեցան՝ Վասիլ քահանայս և » Ստեփանոս քահանայս»: Յայտ է թէ Սիմէոնդ էր եպիսկոպոս քաղաքին և թեմին Այասոյ. զատ 'ի նմանէ յիշին սակաւ եպիսկոպոսունք, ըստ սակաւուց բարգաւաճանաց տեղւոյն. Յովհաննէս յամի 1307 'ի ժողովի Սսոյ. դարձեալ Յովհաննէս յամի 1342 առ Մխիթարաւ կաթողիկոսիւ. յետինս այս թուական կրթի և 'ի հաստատութիւն նախայիշեալ հաւանութեանս՝ թէ յայնմ ամի 'ի ձեռս Հայոց էր քաղաքն: Յետ բազում ժամանակաց՝ յելս կոյս ԺԶ դարու, յամի 1584, յերևան գայ Մարտիրոս եպիսկոպոս Այասոյ ընդ ձեռնագրողս թըղթոյն Ազարիայ կաթողիկոսի՝ առ Պապն Հռովմայ:

Այսոքիկ են յիշատակք յիմ գիտութիւն հասեալք՝ ճոխապանծ և ճոխացուցիչ չահաստանիս մերոյ՝ գերազանցելոյ զամենայն նմանեաքն՝ յերկայնաձիգ ափունս աշխարհին Սիսուանայ. որում՝ յամենայն քաղաքաց և չինից աշխարհին՝ առ հարստութեամբ մերազգեացս չինելոց և վայելչացելոց, ոչ մի այնքան նպաստաւոր գտաւ 'ի կենդանութիւն, որպէս սա և մայրաքաղաքն Սիս: Սիս և Այաս՝ այս երկու անուանք՝ ազգողագոյնք են և արդ յուշ գիտնոց և 'ի զգայարանս ազգայնոց: Յանկման առաջնոյն՝ լուաք գէթ հառաչ մի հայրենի (զեպիսկոպոսին Զաքարեայ). իսկ յաւերել լքանել երկրորդիս՝ ո՞ արդեօք և որպիսի՞ս 'ի խորոց հոգւոյ արձակեաց մըռունչս սրտառուչս...: — Մինչև 'ի յայտնութիւն տըխրալի՝ այլ տակաւին տենչալի հառաչանաց սխուանեան ազդոյն, առցէ՝ որում հաճոյ թուի՝ և յեղյեղեսցէ զվաղընջականն աստուածազդեցիկ ողբերգութիւն որդւոյն Բուզեայ, 'ի վերայ նմանոյն և աննմանոյն և ոչ հեռաւորի 'ի ծովային սահմանացս՝ չահաստանաց տիկնոջ, տարամերժեալն Տիւրոսի. և գոգջիր, միայն փոփոխութեամբ անուանց հին ազգացն ընդ նորոցս, զոր 'ի վեր անդր թուեցաք, ամենևին յարմար և 'ի ճահ երևեսցին բանքն՝ մերումս Այասոյ. քա՛ւ 'ի վերջին տողէն, զոր ոչ կամիմ ընդունել. քանզի զանհաւատին կնքէր անստանոր Եզեկիէլ զանգիւտ բաղդ. իսկ մերս Այաս՝ իբրև քրիստոսապսակ դշխոյ Ծովուն Հայոց, թուի իմն ինձ եթէ՝ 'ի լքանիլն իսպառ յարտաքին օգնականութենէ, յինքն ևեթ ամփոփեալ զաչսն օրհասականս, և զշղարշ գեղոյն ածեալ զթագաւն և զդիմօք, պնդէր զպարկեշտ պարանոցաւն՝ զանմեկնելի պահպանակն, զնշանն տէրունի. և հեզօրէն սաղապմամբ սահեալ յոսկիակուռ գահոյիցն, ինքն իսկ նորահրաշ ոսկէծին ոսկէմայր աշխարհածուհի, իջանէր սուզանէր 'ի դարանակալ ալիսն. յոր՝ եթէ ոչ բաւէին հետազօտել աչք Տեառնողին Տիւրոսի, այլ «Որ նստին 'ի » Քրովբէս և հայի յանդունդս» ո՞չ նկատիցէ և յ'առ 'ի մարդկանէ անչաւիղ բաւիղս անցելոցն և ապառնեաց, զպանծալին Հայոց և զսիրալին հանուրց, զանդուգականն յիւրում դարու՝ զանմոռանալին Այաս:...



180. Խալէ (Բերդանաւ) Մարկո-Պօղոսի վենետկեցւոյ. (Տես յէջ 359).

149. Յուշ լիցի աստանօր, զի յառաջ քան զերևել և պայծառանալ Այասոյ՝ 'ի ձեռն մերայոց, այլ նաւահանգիստ մի կայր ոչ սակաւ յաճախեալ յարևմտեայց, ընդ մէջ նորին յարևմտից՝ և զետաբերանոյն Ջահանայ յարևելից, գրեաթէ զուգաչափ յերկոցուն տարակաց, իբր տասն մղոնաւ, Նաւահանգիստ Ցըցոց թարգմանեալ. զի կոչէր Portus Palorum կամ Portus de Pallibus լատինարէն, և Porto Pali կամ Palli, Altipalli յիտալականն, Pals կամ Port des Paus, այլ և Plas ըստ փռանկաց. զոր ամենայն ծովացոյցք ԺԳ դարու յիշեն, թէ և ոչ ամենեքին նշանակեն, վասն որոյ բազմաց և յայժմու քննողաց յերկբայս մնայ. այլ դիւանք Գենուացւոց ստուգեցին 'ի նորումս, զի յիշի տեղին 'ի մուրհակս նոտարաց 'ի վերջին քառորդի ԺԳ դարու, և և յամի 1300, տակաւին իբր վարուն, և վաճառականք իտալացիք բերէին և հանէին անտի վաճառս: Վենետկեցին Սանուտոյ՝ 'ի Ծովագրութեան Հայոց երկրին՝ որոշակի նշանակէր զայս դիրս, և թերևս զպատճառ անուանն ևս տալով, եթէ 'ի ծայր նա-

ւահանգստին՝ գերան կայ ցցեալ, որպէս թուի 'ի զգուշութիւն նաւորդաց, զի խորուտ էր տեղին [1], և յայն սակս խափանեալ 'ի սպառ և անյայտացեալ յայժմուս. բայց նաւահանգիստն ընդարձակ և անքոյթ համարեալ էր. մինչև ամենայն նաւուց երկրի բաւական գոլ 'ի ձմերոց, ըստ Փռանկի ուրումն ասից, յելս ԺԳ դարու [2]: Յոմանց իտալացւոց կոչեցաւ և Porto Paglia, որ յարդ թարգմանի: Ի նախայիշեալ մուրհակս նօտարաց՝ որոշակի ասի Հայոց նաւահանգիստ կամ թագաւորին Հայոց լինել, Portus Regis Armenie [3], կամ Portus de Pallibus Ermenie [4].

Ամայի են սահմանք Այասոյ, որոց հարկ էր երբեմն կարի մարդաշխիտ և բազմաշէն լինել. դաշտ կամ խոպան ընդարձակ տարածանի շուրջանակի, և առաւել ընդ արևելս կոյս, Այաս-օվասը կամ Թուշուռնուքէ?-օվա կոչեցեալ. յորում՝ արօտք են Թուրքմանաց, և անդաստանք գարւոյ և բամբակի: — Սակաւ ժամուք բացագոյն 'ի հիւսիսոյ կողմանէ՝ պարք ինչ բլրոց իբրև հակաշարք Մասայ լերանց՝ բոլորին զդաշտաւն, արձակելով վտակս մանունս 'ի ծով: Ի միջի սոցին յիշի գեօղ մի միայն Հայաբնակ Մակարէ? անուն: Հանգոյն սմին և արևմտակողմն Այասոյ խոպան է ցՋահան գետ, և աճեն 'ի նմին կանգառք վայրիք: Ցայսմ կողմն և մերձ 'ի յիշեալ գեօղն՝ են այլ ևս գեօղք, Այվալըգ և Հայ-ղագէլի: — Ցարևելակողմն Այասոյ՝ մինչև 'ի գլուխ գոգոյ Հայոց ծոցոյ, այն է 'ի հիւսիսագոյն ափն նորին, որ են մղոնք հնգետասան, չիք բնաւ շէն կամ տեղի ծանօթ: Ցամայի սահմանս Այասոյ թափառին որսական կենդանիք, կաքաւք, նապաստակք և կինձք. այլ և գազանք, բորեան և շնագայլ, մանաւանդ 'ի ձմերանի, և 'ի ծովափունս կըրիայք և ձուկն շատ:

Իբրու փարսախաւ ևեթ հեռի 'ի գլխոյ ծովածոցին և իբր եօթն մղոնաւ 'ի հիւսիսոյ արևելից Մակարէ գեղջ, 'ի կիրճս լերանց՝ ընդ որ անցանէ ծովեզերեայ ուղին՝ տարող 'ի Մսիս և յԱտանա, նշանաւոր տեղի մի կայ յանձուկն. զարդիս պէսպէս կոչեցեալ 'ի Թուրքաց՝ Սեաւ կամ Երկաթի դուռն, Գարա գափու [5], Տէմիր գափու, և ևս և Գուրտ-գուլագ (Գայլականջ), և 'ի գիտնոց ճանաչի յատկապէս Ամանոսեան դրունք, 'Αμανίδες կամ 'Αμανικαὶ Πύλαι, Portæ Amani montis կամ Amanicæ Pylæ. Թէպէտ յայս անուն կոչին և այլ լեռնանցք, և նոյն իսկ կապանն Պէյլանի, որ յաճախ ևս յանուն Ասորւոց կոչի: Երկաթի անուանեալ դուռնն՝ արդ քարաշէն և կիկլոպեան կուտակմամբ կամարադուռն մի է մեծ, և յարևմտից նորին յատկապէս Գուրտ-գուլագ, قورد قولاق, անուանեալ հանգրուան և իջևան վայելչաշէն, ուր գիշերօթեաց Էնզուըրտհ անգղիացի քննող վայրացս (3-4 դեկտ. յամի 1839). բայց արդ անշքացեալ է տեղին, որում անկ էր 'ի հնումն լինել շէն մեծ առ Ամանոսեան դրամբ, զի յիշէ նմին Ստրաբոն և նաւահանգիստ մի փոքր: — Աստանօր բանակեցաւ յամի 1843 Տէրվիշ Ահմէտ զօրավար Օսմանեանց՝ առաքեալ 'ի կուսակալէն Ատանայ (Սիւլէյման փաշայ) ընդդէմ Մըստըգ պէյի. այլ սա քամահեալ զնովաւ՝ անց գնաց 'ի լերինս իւր: — Վտակ մի փոքրիկ անցեալ առ դրամբս՝ իջանէ 'ի ծով:

Մի 'ի ծովամերձ լեռնակաց կողմանս՝ հնգետասան մղոնաւ յելից Այասոյ՝ կոչէր Կայիբոյ, Mons Caibo, և թուի նաւամատոյց ունել կամ լեզուաձև ցամաք ծովամուխ: Ուծծանոյ՝ Կարբոյ (Carbo) գրէ զանուն տեղւոյս. որոյ մերձաւոր է ձայնիւ և թերևս նոյն իսկ անուանեալն Կարպասայ սար կամ գլուխ (Capo Carpasso), որ և հուպ ասի յԱյաս, և թուի ունել և շէն և նաւակայս, զի անդ յամի 1303 նաւապետն Գենուացի Բերչիվալէ-տէ լա Թուրքա՝ կալաւ նաւ մի վենետկեցի: — Սոցին դարձեալ մերձաւոր դրիցն և անուան՝ յիշի Կավիսոս քաղաք եպիսկոպոսանիստ՝ նահանգին Անաւարզայ, Καβισσος: Ոմանք մերձագոյն առ Երկաթի դրամբն համարեցան լինել զԿայիբոյ: — Անտի հնգետասան մղոնաւ ընդ արևելս նշանակէ Սանուտոյ զնաւահանգիստն Գանամելլա կամ Գալամելլա և կամ Գարամիլլա, Canamella, Calamella, Caramilla, որ ոչ աննշան երևի եղեալ յառաջ քան զբարգաւաճանս Այասոյ. զի յանուն իսկ սորին կոչէր յայնժամ ծովածոցն, Golfo di Caramilla, և ոչ վայրապար ինչ յիշէ զայն Վիլլեպրանտ՝ յուղևորութեան իւրում 'ի Կիլիկիա առ Լևոնիւ. և սա ինքն Լևոն յամի 1214 ընդ այլոց տեղեաց առանձնակի ասէ, «Նաև զնաւահանգիստն Գանամելլա», (etiam Portus de Canamella), տալ Հիւրընկալ ասպետաց 'ի գրաւ՝ վասն արծաթոյն զոր էառ փոխ 'ի նոցանէ. կարծեն ոմանք թէ սակս մշակութեան եղեգան շաքարոյ 'ի կողմանսն՝ այսպէս կոչեցեալ իցէ տեղին, (Canna եղէգն, Mel մեղր):

Ցարևելակողմն անկեան ծովածոցին՝ են աւազակոյտք և աւերակք Մարախ կոչեցեալ տեղւոյ, առ որով և գետակ համանուն Պուռնազ գեղջ թափի 'ի ծով. և գեղջերբքն նշմարին մնացուածք հռոմէական շինուածոց, կամարք և դրունք: Ճանապարհագիրն Էտիպ՝ յանուն կամրջին կոչէ զտեղիս Պուռնազ-քէօփրիւսի, بورناز كچريسو: — Ընդարձակագոյն ևս աւերակք են 'ի վերնակողմն ձորակին՝ ընդ հիւսիսի, քաղաքորմք, բնակարանք, տաճար մի մեծ, և ակառն 'ի միջավայր քաղաքին՝ 'ի բարձրաւանդակի. և արտաքոյ՝ երկայնաշար կամարակապ ջրբեր ագուգայք, ձգեալք ընդ արևելս և ընդ արևմուտս,

1 Տես զպատրին բնագիր հեղինակին (Սանուտոյ), զոր աւանդեցաք յէջ 301, ուր յիշատակին մի ըստ միոջէ և յետոյ գրեալ տեղիքն:

2 Là ou toutes les naves dou monde porroient yverner.

3 Մուրհակ կնքեալ յԱյաս 'ի 27 փետրուարի, 1274:

4 Մուրհակ կնքեալ 'ի փետրուարի, 1300, 'ի Ֆամակոստա Կիպրոսի, ուստի Սալվին Պաւա առկոնացի տանելոց էր (Branca de Castro) նաւու իւրով՝ 'ի նաւահանգիստն այն Հայոց՝ 100 քոռ (salma) ցորենոյ, որոյ գին էր 11,300 դրամ Հայոց:

5 Դուռն Խաւարի թարգմանէ զայս՝ տիկինն Պելճիոյոզոյ, *Porte des Ténèbres*. և յաւելու. Cette Porte est un ancien arc de triomphe, dont les ruines figurent admirablement dans le paysage. L'arc s'ouvre au fond d'un ravin dont la riche végétation contraste avec les pentes arides par lesquelles on y descend. Les arbres qui entourent la Porte des Ténèbres sont assez touffus pour éteindre en quelque sorte la clarté du soleil et ne laisser parvenir jusqu'aux vénérables arceaux que quelques pâles rayons. Du haut des collines qui encadrent le ravin, la vue s'étend sur la mer de Syrie, dont les vagues mugissent à peu de distance, et sur les lignes bleuâtres de ces côtes. Le spectacle est magnifique, sortout pour les yeux qu'ont attristés jusque là les ombres sinistres des premiers défilés du Djaour-daghda. — BELGIOJOSO, 89.

բանոր նշանակի յաժանց գեօղ մի Կեօզենէ (Guezeneh) անուն, այլ և աւերակք ևս. որ թէ և չէ խակայէս 'ի ծովեզերին՝ որպէս հին հեղինակք ցուցանեն զայն լինել, այլ մարթ է և յայսմ՝ որպէս և յայլ կողմանս ափանց Կիլիկիոյ՝ հեռացեալ համարել զշէնան 'ի ծովէ, աճմամբ երկրի յողողականց գետոց։ Արդ այս որպէս և է, զնշանակեալ միջոց 20 փարսախաց՝ հատեալ էանց Կրտսերն Կիւրոս, և զհետ նորա յետեալ պատմիչ փիլիսոփայ՝ յանական Բիւրոյն. ընդ նոյն ճանապարհ եկեալ և Մեծին Աղեքսանդրի, անցեալ ընդ Խասս՝ եթող անդ զհիւանդս և զանկար զօրականն, զորս՝ յանխնդիր կոտորեցին Պարսիկք՝ յետ անցանելոյ ընդ անձուկ կապանն Ամանոսի, զոր նշանակեցաք յառաջագոյն 'ի ծախակողման Ջահանայ, առ Պաղչէիւ (յէջ 211), ուր և նշանակի 'ի քարտս՝ կածան մի Արսլան-պօղազ անուն։ Զայն զգացեալ Աղեքսանդրի՝ որ ընդ արևելեան ծովեզերն յառաջ խաղայր՝ ընդ կողմն Ասորւոց, դարձաւ յետս, և եգիտ զԴարեհ բանակեալ աշխարհախումբ գումարտակօքն 'ի հիւսիսոյ կամ յահեկէ Պինարոսի՝ յանհարթ դաշտի և ոչ հեռի ընդարձակի. զի ըստ մանրաքննին Պոլիւբիոսի՝ չորեքտասան ասպարէզք ևեթ էին անդամանոյ 'ի լեռնոտանց Ամանոսի ցծովն, որ լինի հազիւ թէ մղոն և կէս. այլ մարթ է լեռնոտն համարել զգլխաւոր 'ի դաշտին [1]։ Ի նկարագրութենէ [illegible] հեղինակաց անհրկնոյ է՝



182. Սահմանք Իսսոսի.

Դարեհի 'ի հետևակագունդն լինել, և հայելով ընդ հարաւ՝ յաջմէ զծովն՝ յահեկէ զլերինսն ունել. Աղեքսանդրի՝ ներհակաբար 'ի հարաւոյ գալով՝ յահեկէ զծովն և յաջմէ՝ զլերինսն. սա՝ առաւելութիւ ունելով զօրս՝ զիւղաղագոյն էր տեղին. իսկ Դարեհի՝ զի ծանր բանակաւ եկեալ էր և բազում այրուձիով՝ ոչ նոյնպէս. այլ զժնդակագոյն ևս էր նմա՝ այնպիսի ունել ախոյեան ճարտար, արի և երագ։ Թողեալ զօրաց՝ զհնոց և զնորոց՝ նկարագիր և տեղագիր մեծի պատ'րազմիս, հաճոյագոյն մերազգեացս վարկանիմ զաւանդեալն յերկանց նախնեաց, 'ի Պատմութենէն Աղեքսանդրի՝ կարգել զբանս. յորում՝ ըստ այլ և այլ գրչագիր օրինակաց՝ առի Աղեքսանդրի անցեալ ընդ Պաղեստին, եկեալ « Այսիա, որ է Այաս, մերձ 'ի « Կիլիկիա »: իսկ Դարեհ « բանակեցաւ հակառակ նմա « առ գետովն Պինդարոս, (Պինարոս), և զօրաց նորա « կարծեցեալ զերանդագէն կառացն [2] ընկրկել, և սոքա

1 Զայս չափ նկատելով ոմանց՝ անմարթ համարին 'ի փոքրատարածմանին զհետևել զբազմամբոխ բանակ Դարեհի. իսկ այլք՝ բաւական. այն զի զանձկութիւն իսկ տեղւոյն յօգուտ իւր կրթեաց Աղեքսանդր, յառաջ [illegible] Պարսից, [illegible] հեծելոյն։ Ալ կարծի մեծագոյն ինչ էր առնէն և տեղի ճակատամարտին Լիբիոյ, ուր գումարեցան զեմ առ զեմ կէս միլիոն մարդիկ։

2 Մի առն 'ի գրչաց յաւելու աստանօր ծանուցանել, թէ « Այսպէս էր փառքն, 'ի վերայ չորս չորս ձիոց լծեալ. և էր սառուէ

» յառաջագոյն ժամանեալք՝ զգան 'ի կող անդրին Հա-
» ւեալ կալան. և դէմ յանդիման անցեալ կացին կառքն,
» և զբոլոր կուռածակառն յարդարեալ կազմեցին, և
» գնդին հեծելոց ոչ ետուն թոյլ անցանել ընդ մէջ իւ-
» րեանց, և ոչ զօրք 'ի վերայ խաղալ. այլ բազում կա-
» ռացն ամենայն ուրեք պատահեալ՝ պատկանեալք լի-
» նէին. և էին որք քաշքշեալք ջրուէին: Անցեալ 'ի
» միւս կողմն Աղեքսանդրոս և արարեալ հանդէպ առա
» ջապարուց կողմն, և զաւէր գեռն դէպ եղև կազմել Աղե-
» քսանդրի. և եկեալ յերիվարն Բլուզլուիս՝ հրամայեաց
» հանկարծակի փաղանգարացն, աղդ առնել պատերազմական
» փողք, զպատերազմն նշանակել, առ 'ի զարթուցանել
» զզուարթարեալ զունդն 'ի յաղմուկ ռազմին. որ և հնչե-
» ցեալ փողքն և աղաղակ մեծ եղեալ զօրացն՝ շարժեցան
» յանհնարին և 'ի մեծ և 'ի բազում կռիւս. և զդրդէր առ.
» հասարակ. և մեծաւ հանդիսիւ բախեալ զմիմեանս 'ի
» հանդէս մարտին՝ մեծ ժամս, 'ի գլուխ թևացն հարեալ
» ընդ միմեանս բուռն և մեծաւ ուժով ընդ միմեանց
» դէմ կային նիզակօք: Որ և առաւօտ երկոցունց կող-
» մանց յաղթութիւն արարեալ՝ մեկնեցան 'ի միմեանց:
» Իսկ Աղեքսանդրացիքն մղէին զԴարեհացիսն, և մե-
» ծապէս խորտակեցին. և խառնեալք ընդ միմեանս՝
» անկեալք և խորտակեալք վասն բազմութեան զօ-
» րացն. և շատ այն ինչ էր որ կենդանեաց անգս կրէին,



183. Այանանք Իսսեան ճակատամարտին.

» և բազում ինչ որ 'ի թշնամեացն: Եւ ոչ այլ ինչ էր
» անդ տեսանել՝ բայց միայն 'ի վայր անկելոցն, զի ոչ
» գոյր որոշել ոչ զՊարսիկս և ոչ զՄակեդոնացիսն, ոչ
» զզօրագլուխ և ոչ զնախարար, ոչ զհեծեալ և ոչ զհե-
» տևակ, 'ի բազում փոշւոյն. քանզի ոչ երկինք երևէր
» և ոչ երկիր տեսանէր մարդ 'ի բազում եղելոց ապա-
» ժուժին.... Եւ հզօր զլման եղելոյ՝ 'ի փախուստ
» զինեցին զօրքն Պարսից... և ժամն ընդ երեկոյս էր
» խոնարհեալ. Դարեհի երկուցեալ՝ զկառսն 'ի բաց թո-
» ղոյր, զի զժուարին էր... և 'ի ձի եկեալ փախչէր[1] »:

» առք 'ի նմանութիւն գերանդւոյ. մի յայն կողմն կառացն և մի
» յայսն. և յորժամ արշաւէր կառքն հանդէպ ձիոցն ընդ մէջ հե-
» ծելոցն, յայնժամ երկու առջքն յերկու կողմանսն զզօրսն հերձ
» զօրացն հնձէր. և այսպէս էին ամենայն կառքն Դարեհի, որով
» կարծէր յաղթել Աղեքսանդրի »:

1 Խաչատուր Կեչառեցի վերաբեն յերիւրալ Պատմութեանն Աղեքսանդրի, ասկաւոր, քերթող և քերթող, որպէս ինքն ասէ, յաւելու և առաւօտ.

» Չայն արար, ձայն արար,
Փող քընարին ձայն արար։
Հանեց զթուրըդ քո Նոհար,
Ի երիվարըդ քո հեծար.
Զամենեքեան 'ի հանդէս տարար,
Զօրքդ զարդեցիր եդար,
Ի Դարեհի հանդէպ հասար,
Ճակատըն բաղըր անցար.

Պատմիչ մեր՝ որպէս և այլք՝ 110 կամ 120,000 առեն զանկեալսն 'ի զօրաց Պարսից, իսկ 'ի Յունաց սակաւս յոյժ։

Թէպէտ ոչ առանօր եղև զրաւ կենաց և իրաց Դարեհի, այլ բաղդի նորա և բովանդակ Ասիոյ վճարեալ էր. զի յայնմ հետէ անդուլ հետամուտ լեալ նմին Աղեքսանդրի մինչև 'ի Պարսս, նորանոր յաղթանակօք նուաճելով զաշխարհն՝ երբեմ կամ դադարեցոյց զմեծ զայն ինքնակալութիւն, և զիւրն կամ զՅունացն հաստատեաց։ Տեղի ճակատամարտին Իսոսի կոչեցաւ 'ի Յունաց Նիկոպոլիս, Νικόπολις, այսինքն է Յաղթութեան քաղաք, ուր և նշան յաղթանակի կանգնեցաւ. և թերևս առանօր իսկ են անուանեալ Բագինքն Աղեքսանդրի, Aræ Alexandri, ուրանօր և ինքն Կիկերոն ասէ բանակեալ աւուրս չորս, առ ստորոտովք Ամանոսեան լերանցն. որոց մերձ, և եօթն մղոնաւ հեռի 'ի ծովափանց՝ երևին աւերակք մեծի քաղաքի, հուպ 'ի Քամ-քէօյ (թերևս Քամ-քուհ) լեռան հրաբղխեայ, զոր կարծեն ոմանք Նիկոպոլսոյ նշխարս[1]։ — Բազմերախտն մեր Ներսէս Լամբրոնեցի՝ յետ ասելոյ ('ի Մեկնութեան Զաքարիայ), եթէ « Աղեքսանդրոս Մակեդոնացի՝ զԴարեհ Պարսից թագաւորն որ նստէր 'ի Բաբելոն՝ սպան 'ի Դաշտին Կիլիկեցւոց, և դադարեցոյց զՊարսից թագաւորութիւն », որով և զճակատատեղն ընկրկէ յարևմուտս կոյս, անդրագոյն ևս յաւելու յիշատակ և արձան մի՝ յոյժ մեծարգոյ և արժանաքննին բանասիրաց հնաբանից. այսպէս ասելով. « Որպէս և Գիր արձանին մերձ 'ի քաղաքն » Մամուեստիա՝ ունի զյիշատակարանն այսպէս.

ՄԱՄՈՒԵՍՏԻԱ ԱՌԱՋԻ ԴՐԱՆՑՆ
ՄԵՐՁ ՑԱԼՍԱՑ ՑՈՐՋԱՆՍՆ Ի ԿԻԻԼԻԿԵԱ
ԲԻԻՐՔ ՊԱՐՍԿԱՑՆ ՈՍԿԵՐՔ.
ԳՈՐԾՔ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԱԿԵԴՈՆԱՑԻՈՑ.
ՈՐՔ ՑԱՑՆԺԱՄ ՋԹԱԳԱՒՈՐԻ ՋԴԱՐԵՀԻ
ՋՎԵՐՋԻՆ ՃԱՆԱՊԱՐՀՆ ՋՀԵՏ ԵԿԱՔ.

» և մերձ այս Արձանի չեղջակոյտ ոսկերց կան մինչև » ցայսօր ժամանակի »։ Յունագիր կիսեղծ իմն արձան էր այդ, եթէ յօտար լեզու, չասէ սուրակն և բարեբաղդ վերծանողն մեր, այլ զգալի է հնութիւնն[2]։ — Ու՞ք յաշխարհագրաց կամ 'ի պատմչաց կարէ զանց առնել զայսքան մեծ յիշատակօք. յոր յաւելուն ոմանք և զերկրորդ իմն բաղդասահման ճակատամարտ մղեալ 'ի սմին տեղւոջ, 500 և աւելի ամօք յետոյ, այն է յամի Տեառն 194, Սեպտիմոսի Սևերոսի և Պեսցեննի Նիգերի Հռովմայեցւոց, կռուելով ընդ միմեանս՝ վասն ինքնակալութեանն, և առաջնոյն յաղթող գտանելով. իսկ Նիգերի փախըստական գնացեալ 'ի Կիւզիկէ՝ անդ սպանանի։ Բայց դէպքս այսպիսի միայն զանձին միոյ կամ զվարչութեան ժամանակի միոյ ինքնակալի՝ կնքեցին զբաղդ։

Մեծագոյն ևս բաղդասահման պատերազմն և գործ կատարեցաւ 'ի նմին վայրի՝ յազգայնոցս և ազգայնոցս, նոյնպէս ձախողակ. զոր անգիտանան օտարք՝ առ 'ի կարգել ընդ Նիգերայն և ընդ Դարեհին. քան զորս՝ ոչ մեզ միայն սրտառուչ են դէպքն՝ այլ կարծեմ և ամենայն սրտայնոց, մանաւանդ որոց կրթեալ իցէ 'ի քննութիւն անցից Խաչակրացն անուանեալ ժամանակաց. զի առանօր հանդիպեցաւ առաջին և մեծ բաղխումն Եգիպտացւոց ընդ Հայոց, և խորտակումն զօրութեան մերայոցս, թէ և ոչ անփառունակ, և ամփոփել չքոյ քառասնամեայ պանծալի թագաւորութեան Հեթմոյ Ա, և զառաջինն ակամայ հարկել այլազգւոյն. որ՝ առաւել խորագիտութեամբ և յանկարծօրէն հասանելով 'ի վերայ սակաւազօր գնդին Հայոց՝ կորզեաց զյաղթութիւն, քան հաւասար ընդ հաւասարի պատերազմելով։ Ցորմէ հետէ դաշնադիր եղեալ էր Հեթմոյ ընդ Թաթարաց, մախայր ընդ նմա սուլտանն Եգիպտոսի, գիտելով զի և ինքեան նիւթեալ կայր որ ինչ 'ի Բաբելոն և յայլ կողմանս էանց, և մրմռալով մնայր պատեհի. և ահա լուեալ զմահ Հուլաղուի ('ի փետրուարի 1265 ամի), վաղահարար արշաւեաց յԱսորիս, և մի ըստ միոջէ նուաճեալ զբերդեանն և զքաղաքանին՝ զոր Թաթարաց հատեալ էր 'ի նմանէ և 'ի նմանեացն, մերձենայր 'ի սահմանս Կիլիկիոյ։ Հեթմոյ զգուշահայեաց լեալ և տեսեալ զի չև ևս յարդարեալ են իւք Թաթարաց՝ յետ մահուան մեծրմին իւրոյ Հուլաղուի, խորհեցաւ խաղաղութիւն առնել ընդ սուլտանին (Պիպարսայ), մինչ էր նա 'ի Դամասկոս. ոչ մերժեաց և Պիպարս, « Բայց իրս ինչ խնդրէր յարքայէն. ամրոցս և

Փոթորակի պէս խառնեցար,
Արծըւաբար դու բարձրացար։ ...
Ճակատ առ ճակատ եղեն,
Խառնեցան յանդուգն ու աճագին,
Դիակօք զվայրըն լցին.
Խաւարաւ արեւն 'ի յերկին։
Խառնամբոխ մեծ հանդիսին
Աղեքսանդրու և Դարեհիս,
Սուսերամերկ կարաւանիս
Աճապարեալք առաւ զընդիս.
Դիաթաւալ արեան ծովիս,
Ճախր և ճակատ 'ի մէջ դաշտիս.
Կէսք վա՜յ ասեն յապարիսիս,
Կէսք վա՜յ ասեն յաջողակիս։

Դարե՛հ, դարձաւ աւաղ 'ի չար.
Բաղդըդ նենգեց քեզ չարաչար.
Դարձիր 'ի հետ ու արա քեզ ճար.
Հա՛ն արտասուս անձրեւաչար.
Բանդ 'ի վերուստ է անհընար,
Խափանեցաւ խորհուրդդ անկար»։

Միւս քերդող և երկասիրող 'ի սոյն մասեան, Գրիգորիս Աղթամարայ կաթողիկոս, գրէ.
« Այս է մակեդոնեան հզօր Աղեքսանդր հեծեալ յերիվար.
Փողեցն հրաման երետ՝ հարկանել զերգն աղմըկարար։
Ջաուչին այլ 'ի մէջ անցաւ, ազդ առնէր զօրացն անմոլար.
Ըղաւուրն է հաներ աքքայս, դու ըռնէր կայք հանց կամակար։
Երբ լըսեցին զպատերազմին զձայնըն փողոյ ազդել խըմբին,
Վառեալ զալամ սպառազինին, ըռումբք դրօշակք անտառ մայրին.
Շող և փայլուն չար սուսերաց զրահիւք պողփայլ սաղաւարտին,
Քաջ և արիքըն պնդէին, և սիրտք վատաց ճմլեալ կային »։

1 ՊՐԻԱՆՈՅ, *La Siria e l'Asia Minore*, 446։

2 Զորք օրինակք են առ մեզ Մեկնութեան ԺԲ մարգարէից, յորում այս բանք Ներսիսի, հնագոյնն գրեալ յամի 1415. և գրեաթէ համաձայն են չորեքին ևս. միայն յերիս նորագոյնս՝ յաւելու գրեալ է յերկրորդ տողին. յամանս՝ ոսկերց յերրորդին, և վերջին բառն կայ։ Յիշեցաք զԱլէուս գետ (յէջ 160), բայց հեռի առտի և 'ի հովիտս Սարոսի. յիշեցաւ և Աէյեան դաշտն (յէջ 263), յորում 'ի դէպ էր լինել և համանուն գետոյ. և նշանելի է բան արձանին Մասոյ՝ որ զայս անուն գետ յիշէ փոխանակ Պինարոսի։ Դարձեալ և զարդիս ԱԼՈԻՍ անուն վիճակ լսի 'ի կողմանքս՝ յօսմանեան վիճակագրութեան, յԱդէր գաւառի նահանգին Ատանայ, ուր և Պայաս վիճակ։

» այլ տեղիս՝ որ էր սահմանակից աշխարհի իւրոյ. և Թա֊
» գաւորն ոչ կատարէր զխնդրելին, վասն երկուց պատ֊
» ճառաց. մի՝ վասն երկեղին Նետողաց, զի մի ասասցեն
» թէ ընդ սուլտանին Եգիպտոսի է Թագաւորն Հեթում,
» և զմեր ազատեալ տեղիսն և ամրոցսն՝ սուլտանին տրի֊
» տուր ետ. և միւս այլ... զի մի ընդ իշխանութեամբ
» նորա մտանիցէ. զի էր բազում ժամանակաց Թագա֊
» ւոր, յաղթող և անուանի, և սուլտանն՝ ծառայ վատ֊
» թար ծառայի. և սպա այնպէս զօրացաւ՝ մինչ զի եր֊
» կընչէին 'ի նմանէ. և բազում անգամ Թագաւորն ա֊
» ռաքեաց առ սուլտանն սրս պատուաւորս՝ գերագոյն
» պարգևօք, զի արասցէ սէր, և սուլտանն ոչ առնոյր
» յանձն, այլ զվերոյ անուանեալ տեղիսն խնդրէր։ Եւ
» ապա առեալ զզօրս իւր՝ գայր մինչև 'ի Հալպ. և եդ զօ֊
» րապետ զօրաց իւրոց 'ի մեծամեծաց իւրոց՝ զոմն Ըմըլ֊
» մաւթ անուն, և երկրորդին Ալֆի, և զսուլտանն Հալ֊
» պայ. և առաքեաց զնոսա գալ 'ի վերայ զօրաց արքային
» Հեթմոյ, յերկիրն Կիլիկիոյ, և ինքն անդէն մնաց »։

Այսոքիկ ըստ արքունի պատմչին մերոյ. իսկ այլազ֊
գեաց պատմիչք՝ զզօրավարսն կոչեն Էլ Մանսուր ամիրայ
Եմաթայ, և ըստ ձեռանէ նորին իզզիւտտին Այղան և
Սէյֆէտտին Գալավուն. որք և յութերորդում աւուր
ամսեան օգոստոսի (1266) մխեցան 'ի սահմանս Կիլիկիոյ։
Փութացաւ Հեթում յառաջագոյն զօրաժողով լինել, և
խնդրել ևս օգնութիւն 'ի Թաթարաց. յոր սակս՝ և ա֊
ռեալ զբաժին մի զօրացն՝ ճեպեաց գնալ առ գլխաւոր
նոցին, 'ի ճամբարն՝ որ ընդ մէջ Ալպիստանի և Կոկիսոնի.
այլ Թաթարն չառնոյր յանձն զօրահատոյց լինել՝ մինչչև
առեալ հրաման 'ի Ղանէն (Ապաղայ). առ որ պնդա֊
դեսպանս առաքեաց Հեթում, զայլ երկու բաժինս զօ֊
րացն՝ իբրև հնգետասան հազար արանց՝ տուեալ 'ի ձեռս
երկոցուն որդւոց իւրոց, Լևոնի և Թորոսի, և այլոց իշ֊
խանաց, ընդ որս արժան էր լինել և Սմբատայ Գունդ֊
ստապլի, որպէս յիշեն արևելեայք, այլ մերքս՝ ոչ. սա֊
կայն սխալեն նոքա ոչ սակաւ։ Մի յերկոցուն զօրաբաժ֊
նիցս կալաւ զանցս հռչակաւոր և յատկապէս կոչեցելոյ
Դրանն, որ 'ի հիւսիսոյ Աղեքսանդրեկի, զորմէ 'ի ստո֊
րև ըստ լիցի բան. միւսն՝ եկաց վերագոյն 'ի հիւսիսի, յա֊
նուանեալ տեղին Մառի, ուր միւս ևս կապան էր մերձ
'ի դարեհեան և 'ի Նիգերեան ճակատատեղիս։ Մալա֊
քիա պատմիչ՝ ասէ վասն սուլտանին՝ առաքեալ զհեծե֊
լազօրն « ընդ ճանապարհն Մառոյ ». և այսու ցուցանէ
նշանաւոր իմն տեղի կամ անցս ճանապարհի լինել. զոր
հաւաստէ և արաբացի պատմիչն Ապուլֆէտա, 'ի յիշելն
զապստակ 1296 ամին, Տէրպէնտ էլ–Մէրրի دربند
المرّى կոչելով. և իբր կիսօրեայ ճանապարհաւ յարևե֊
լից Սարուանդիքարի ասելով, և զմիջոց երկոցուն՝ ան֊
տառ ստուար և բարձրաձաղկ եղևնեաց, որպիսիք ոչ
գտանէին այլուր։ Ցայս ապաւինեալ դիրս՝ համարէին
Հայք արգելուլ զմուտս Եգիպտացւոց յերկիր իւրեանց,
մինչև ցդարձ Թագաւորին Հեթմոյ. մանաւանդ զի սա
նախահոգութեամբ կանգնեալ էր աշտարակս հզօրս 'ի
գլուխս լերանց՝ ուր և ուրեք կասկածէր արշաւանս թըշ֊
նամեաց [1]. զոր գիտելով և Եգիպտացւոցն՝ որոնեցին
անկասկածագոյն վայրս դժուարինս, և գաղտագողի ան֊
ցեալ, « եկեալ հասին մինչև 'ի տեղին որ կոչէր Նիկոյ֊
» պօլիս, առ ստորոտով լերինն՝ որ կոչի Սևաւ, և անդ ի֊
» ջավանս կալան »։ Այսպէս հաւաստէ պատմիչ մեր ըզ֊
դիրս կարևոր տեղւոյս՝ 'ի լեռնակողմն լինել, զորմէ վէճ
է առ բանասէրս, և արդարանայ Պտղոմէոս՝ որ իբր
տասն մղոնաւ յարևելից Իսսոսի նշանակէ զայն։ Այն
ինչ բանակեալ էր և Հայոց 'ի վերոյիշեալն Մառի, (որ
յայտնի սակաւուք 'ի հարաւոյ վերնոյն գոլ), և էր այն օր
երկուշաբթի, 23 ամսոյն օգոստոսի, յանկարծուց տե֊
սեալ զթշնամիսն՝ մինչ չև էր հասեալ Թագաւորին Հեթ֊
մոյ, որում անձկաւ սպասեալ մնային, զառաջինն խռո֊
վեցան, այլ անդէն քաջալերեալ՝ սկսան նախամարտիկ
գնդօքն յարձակմունս ինչ առնել։ Ոմանք 'ի պատմչաց
ասեն՝ աւուրս երկուս ժուժկալեալ Հայոց և կռուեալ.
իսկ յարքունի պատմչէն գիտեմք՝ զի 'ի վաղուեան երեք֊
շաբաթոջ աւուր եղև բուն կռիւն 'ի Մառի, ուր եկին
հասին Եգիպտացիք, և աւարտեցաւ գործն. զոր՝ մարթ
է ասել փառօք և անփառունակ. ըստ յետնոյս, զի
« փոքր մի կացին ընդդէմ միմեանց (երկոքին կողմանքն),
» և ապա՝ յաղդմանէ չարին՝ 'ի փախուստ դարձան հա֊
» ւատացելոցն զօրք՝ առանց մարտի և պատերազմի ».
այլ անկ է աստ յիշել՝ զի քառասուն և հինգ հազարք էին
մարտիկք թշնամեացն. բայց սակայն կամայ թէ ակամայ,
ըստ այլոյ պատմչի՝ « Ետուն զթագաժառանգ որդիս իւր
» (Հեթմոյ) 'ի ձեռս անօրէն գայլոցն, և ինքեանք փա֊
» խեան յամուրս իւրեանց »։ — Իսկ փառօք, զի « որ֊
» դիք Թագաւորին՝ Պարոնն Հայոց Լևոն, և եղբայրն
» իւր Թորոս՝ դարձան 'ի զօրաց իւրեանց և գնացին ընդ֊
» դէմ անօրինացն՝ պատերազմել ընդ նոսա. որ և զԹո֊
» րոս սպանին 'ի նոյն մարտ պատերազմին, և զՊարոնն
» Հայոց զԼևոն՝ ընդ ձեռամբ ածեալ կալան, և զորդի
» սպարապետին Հայոց Սմբատայ՝ զՎասիլ՝ մականուն
» Թաթարն, և այլ ընդ նոսա, զՃիլարտոմն (Ժիրար֊
» տէն?) և զԱտոմն. և տարեալ զնոսա մինչև 'ի Սիս,
» և անդ եդեալ յարգելանս 'ի տաճարն իւր. և կա֊
» ցեալ անդ աւուրս ինչ », և այլն։ Արաբացի պատմիչք՝
ոչ մի այլ աւելի որդիս ասեն Սմբատայ սպարապետի՝
գերեալս, և զմի յեղբարց նորին և Թագաւորին՝ անկեալ
'ի մարտին. որ ոչ է ճշմարիտ. զի ամենայն յիշեալ որ֊
դւոց Թագաւորահօրն Կոստանդնի՝ ծանօթ են և ժամա֊
նակք կատարածի կենաց. դարձեալ աւանդեն նոքա եր֊
կոտասան իշխանաց կամ պարոնայց լինել 'ի զօրուն Հա֊
յոց։ Այլ այսոքիկ որպէս զիարդ իցեն, ստոյգ այս է,
« Որ գլուխ և խոց անողջանալի կոտորելոցն (եղև)՝ Թո֊
» րոս արքայորդին, գեղեցիկ ծաղիկ 'ի մատաղ հասակի,

[1] Ոմն 'ի քննողաց դաշտիս և տեղւոյս՝ վկայէ, զի յամենայն մեր֊
ձաւոր կողմանս՝ երևին մնացորդք շինուածոց և ամրութեանց, որ֊
պէս 'ի գլուխ վերոյիշեալ Քամ լերին՝ որմք 'ի նմին խանձաքարէ.
'ի հիւսիսոյ կողմանէ՝ նրբուղի 'ի կրաքար լեռնամիջի, և Դուռն և
աշտարակ մի ողիւաշէն նորատարազ, և 'ի միջավայր ուղւոյն կա֊
մար մեծ և գեղեցիկ 'ի բազմանկիւնի յղկեալ կրաքարանց, յեցեալ
յորմունս խանձաքարեայս. և թուի կամարն կանգնեալ 'ի Հռով֊
մայեցւոց 'ի պատիւ Գերմանիկոսի, ըստ Տարեգրութեան Տակիտո֊
սի (Բ. ՁԳ.) « Arcus editi... et in monte Siriæ Amano cum inscriptione rerum gestarum ». Tacitus. — Բայց արձանագիր ոչ յայտնեցաւ։

» մերձ 'ի փթիթս մուրուաց, վկայեալ յամենայն բերա-
» նոյ, անպակաս 'ի բովանդակ բարւոյ, և կուսութեամբ
» չտեմարանեալ 'ի ծրարս շնորհացն Աստուծոյ. որ յօ-
» ժարութեամբ ևս դիմեալ 'ի պսակն արեան. քանզի
» հարցեալ զոմն՝ ոչ ետ զանուն հօրն, զի կենօք գերեալ՝
» մի լիցի աւելի բեռն հօրն և աշխարհին՝ ընդ անդրանիկ
» եղբօրն Լևոնի, պակելոյ և հրաւիրելոյ յաթոռ թա-
» գաւորութեանն՝ առ կենօք հօրն։ Քանզի նա եղև գը-
» լուխ գերելոցն մեր, և հուր աղէկէզ լերդաչարչար և
» սրտակտուր աշխարհիս մեր և ազգիս, որ կամք շնչար-
» գել և յերերման։ Հասանէ՛ ձեռն վերին, որ եհարն
» ցասմամբ՝ նոյն բժշկէ ողորմութեամբ, ածելով զմեծա-
» բաց խոցն, առնելով գերեդարձ՝ զոր տարան ընդ այլսն.
» հնգետասան օր յամելով յաշխարհս և ընլով աղէտիւք,
» զնոսա՝ իրօք, և զմեզ՝ խոցոտիչ համբաւովն »։ Զայսո-
ւիկ վայելչաբանէ քաջազգած ծերունին Վարդան Պատ-
միչ, ականատես ծանօթ և սիրելի արքունեաց Հեթմոյ։
Ոչ ինչ ընդհատ և միւս ծանօթ նոցին պատմագիր Մա-
ղաքիա՝ գորովանօք դրէ զդէպսն և զսրտառուչ սուգ
Հեթմոյ. նա և յաւելու, թէ և սուլտանն իսկ՝ « ընդ
» Պարոն Թորոսի սպանումն՝ յոյժ տրտմեցաւ. բարկա-
» ցաւ սպանողացն. և սպանողքն ասացին, թէ մեք ոչ
» գիտացաք թէ որդի թագաւորի է. զի զբազումս սպան
» 'ի մեզանէ, և զբազումս խոցեաց. ապա յետոյ մեք ջան
» 'ի վերայ եդեալ սպանաք զնա [1] »։ — Մինչև ցայս
վայր հարկ համարեցաք յիշատակել իբրև տեղապատ-
մութեան պահանջ, զայն թողումք, որ սոսկ սահմանի
պատմութեան է անկ. բայց ազգայնոյ՝ որոյ սիրելի է հե-
տաքննել զաշխարհաքարոզ ճակատատեղի խասեան մար-
տի Գարեհին և Աղեքսանդրի, իցէ՞ հնար 'ի մոռացօնս
թողուլ զՄառեայն, ուր անվրէպ յետ 1600 ամաց այս-
պիսի անցին անցք՝ ընդ պայազատս յետին հարստու-
թեան Հայկազնեայցս ։ Ցիշեսցի և այս, զի արդարև
թէպէտ և սոսկ պատերազմ էր եղեալն անդ՝ գերու-
թեամբ և սպանութեամբ արքայորդւոց, այլ և առաջին
անգամ յետ հաստատութեան թագաւորութեանն՝ եհաս
աւեր աշխարհին և մայրաքաղաքին Սսոյ, և սկիզբն եղև
ակամայ հարկելոյ Հայոց՝ ոսոխի զուռզի. և ըստ այսմ
տեսութեան՝ 'ի դէպ է բաղդատահման ասել զգործ մար-
տին, կամ բաղդաբեկ՝ ըստ մերոցս։ Սակայն յուշ լիցի և
այն, զի և յետ այնր՝ աւելի քան զհարիւր ամ տևեցին
տոկացին Հայք, և բազում անգամ մարտեան ընդ Ե-
գիպտացիսն, թօթափելով զլուծ նոցա և զհարկ. մինչև
լցաւ սահմանեալն 'ի վերուստ ժամանակ ազատութեան
և ծառայութեան։ Բայց միւսանգամ ևս նկատելով զտե-
ղիս զայս յիշատակաց՝ զՆիկոպօլիս, կարծեմ թէ ոչ այն-
քան փառաւոր լիցի յաղթութեամբ Աղեքսանդրի, կամ
ցաւալի՝ պարտութեամբ Պարսկայնոյն , և ոչ այնքան
դժպհի՝ փառաւէր հակառակամարտութեամբ կայսե-
րացն Հռովմայեցւոց, որքան յաւէտ սրտառուչ և դրուա-
տելի՝ պատահարաւ Թորոսի և Լևոնի, առ որովք՝ ան-
շքանան և աղօտանան նախնդակքն դէպք։

Նոր քննիչք տեղեացս՝ Անգղիացիք ոմանք և ամերի-
կացի Քարոզիչք՝ զՆիկոպօլիս համարին լինել առ Իսլահիէ
աւանաւ՝ որ 'ի միջահովտի Կեավուր և Քիւրտ լերանց,
շինեալ առ մեօք 'ի բնակութիւն Սեաւլեռնեայցն նուա-
ճելոց. ուր և աւերակք ինչ գոն և յոյն արձանագիր մի. և
զանուանի Ամանոսեան անցսն՝ յարևմտից նորին առ Խա-
զան-Ալի կոչեցեալ տեղեաւ, յերի նախայիշեալ Գարա-
պաղչէ գեղջ. յորոց հիւսիսոյ՝ յանգի լեառնն 'ի գա-
հավէժ վախուստ, յոր հուպ կառուցեալ երևի քարաշէն
պարիսպ հզօր, անկիւն գործելով և փակելով զանցսն։

[1] Ցերկրորդում ամի աղետալի գիտացս՝ գրէր և նախածանօթ մեր ճարտար գրիչն Գէորգ Լամբրունեցի. « Բռնադատէ զիս առաւօր » թախիծ սրտիս՝ յողորմելիս յամել պատմութիւն. զի յանցելում » ամի . . . սուլտանն Մսրայ՝ բազմաձեռն զօրու պատրաստութեամբ » մանհէտական ազդիւ, իբր 'ի ցասմանէ Աստուծոյ ածեալ, եմուտ » յերկիրն Կիլիկիոյ. որում ոչ կարացեալ զդէմ ունել զօրքն Հայոց, » անդէն վաղվաղակի թիկունս դարձուցեալ՝ պարտեալ յաղթեալ » լքեալ վայրավատեալ ցրուեալ լինէին ։ Ուրանօր երկու որդիք » թագաւորին ձեռբակալ եղեալ՝ 'ի թշնամեացն 'ի բուռն անկա- » նէին . կրսերոյն սրախողխող եղեալ, զերէցն գերի վարէին . և ընդ » ցրուել զօրացն , զի և թագաւորն ևս ոչ եղև պատահեալ յեր- » կրին, այնուհետև առանց կասկածի եղեալ, բազում նախճիրս և » ոճիրս արարեալ, հրդեհեալ գյոլովս 'ի քաղաքաց և զաւառս նո- » ցին, և տապալեալ զեկեղեցիս, և զգիրս սուրբս հրոյ մատնեալ. » ընդ որս և զարքայանիստ քաղաքն Սիս՝ գեղեցկաշէն ապարանօք » և մեծափառ եկեղեցեաւն՝ Սրբոյն Սոփեայ՝ հրձիգ արարեալ, » զբազումս 'ի սուր սուսերի մաշեալ, և զևս բազումս գերի վա- » րեալ, հանդերձ յոլով աւարաւ »։ (Մատն է բանից որ յէջ 102)։

184. Խախտիկ ձեռնագրի Հեթմոյ Ա., յամի 1252.

## Բ. ՃԿԵՐ, ԵՒ ԱՄԱՆՈՍ ԿԱՄ ՍԵԱՒ ԼԵՐԻՆՔ

131. Մի 'ի սակաւուց անտի 'ի գիրս մեր գաւառի անուամբ յիշատակելոց՝ ճկեր, կայ 'ի գլուխ բովանդակ լայնութեան Հայոց Ծովածոցոյն, այն է՝ մասին որ ուղղակի 'ի հիւսիսոյ Մ. ձգի 'ի հարաւ Եւ., կամ միջոցն որ 'ի Գարա–սու գետոյ մինչև յԱղեքսանդրեակ քաղաք և 'ի սահմանս Պէյլանայ. որ է իբր 25 մղոն ընդ երկայնն՝ ուղիղ գծաւ. իսկ լայնութիւն երկրին 'ի ծովափանցն ցԱմանոս լերինս՝ սակաւ յոյժ է, մանաւանդ հարաւակողմն, յորում ընդ ծով և ընդ պարսպաձև լերինսն՝ ուրեք հազիւ թէ երկու կամ երեք փարսախք են, ուրեք նուազագոյն ևս. և զի ոչ միայն զայս գաւառ՝ այլ և զսահմանորդն որ ընդ հարաւ՝ զՀռոսոս՝ նոյնպէս պատեն լերինքս, որպէս և զարևելեայ հիւսիսի Այասոյ գաւառին, նախ զսոցանէ կարևոր համարիմ ճառել համառօտիւ։

Ըստ հին աշխարհագրաց, Ամանոս (ὁ 'Αμανός, τὸ 'Αμανόν, Amanus) լերինք՝ բազուկ մի համարին Տաւրոսական լերանց, այլ անջատք, և 'ի կողմանց Կատաւնեաց՝ 'ի հիւսիսոյ՝ ձգեալ ընդ հարաւ ցափունս Ասորւոց երկրի, և ընդ արևելս՝ ցԵփրատ գետ. գրեաթէ աղխաղխեալ միաշար բարձունք են, սակաւս և անձուկս ունելով միջոցս կամ կտրածս անջրանցս, յորս և հռչակաւոր նեղուցքն և Դրունք են Ամանոսեանք։ Ի միջին դարս՝ յօտարաց և 'ի մերոց՝ Սեաւ լերինք կոչէին. անշուշտ ըստ գունոյ բուսաբերեալ մայրեացն հոծութեան, որպէս և այլ նոյնանուն լերինք յայլ աշխարհս. բայց Սանուտոյ՝ Montagna Neros կոչելով՝ համարի յունական աշխարհիկ բառիւ ջուր նշանակել, իբրև յոյժ ջրաբուղխ լերինս. վարկած անընդունելի[1]. զի և ցարդ 'ի Թուրքաց Գարա–տաղ կոչին. և նոքին իսկ Յոյնք 'ի գիրս նոյնպէս Սեաւ լեառն կոչէին, Μαῦρος ὄρος. Նոյնպէս և Ասորիք՝ Թուրաուշամա։ Իսկ 'ի նուազել իշխանութեան մերայոցս և 'ի ծաւալել Գարամանեաց՝ յանուն սոցա կոչեցին Արաբացիք Ճէպէլ–էլ Գարամանի جبل القرامان. բայց վասն բնակութեան քրիստոնէից 'ի նոսին՝ կոչի ցարդ ևս Կեավուր տաղի. ըստ մեծի մասինն նաև Ալմա–տաղ, մանաւանդ հիւսիսային մասնն. միջինն՝ յոմանց կոչի Գզըլ–տաղ, յայլոց Պէյլանի–տաղ. ստորինն կամ հարաւային մասն՝ որ 'ի Հռոսոս գաւառի՝ Քէսրիկ–տաղ, և ըստ ումանց Ճէպէլ Մուսա, որ և յանդի 'ի (Խոզագլուխ) սարն Ռասխանձիր, ուր և աւարտ է սահմանաց Կիլիկիոյ. իսկ որ անտի և անդր ձգին շարունակքն լերինք՝ 'ի հնումն կոչէին Պիերեանք։ — Ջուգահեռական իմն Կեավուր տաղ լերանց՝ ձգի յարևելից կուսէ պար ցածագոյն լերանց, յորս բարձրագոյն և երկայնանիստ՝ Քիւրտի լեառն, յոր անուն 'ի դէպ է կոչել զբովանդակն։ Ի միջահովտի կըրկին պարուցս՝ խաղան գետակք, կէսք 'ի Ջահան խառնելով՝ յահեկէն, այլք ուղղակի իջանելով 'ի Ծոցն Հայոց, և ոլք յարևելից կուսէ լերանցն՝ օժանդակեն զգետս Անտիոքայ։ — Ջեն քաջ ծանուցեալ հանգամանք լերանցս, սակս 'ի սկզբանցն և այսր՝ բունելոյ 'ի նոսին աւազակող ազատասէր մարդկան. ոլք և առ Հռոմայեցւովք իսկ հանգոյն յելուզակաց ծովեզերացն՝ անհանգստէին զանցորդս և զմերձաբնակս. յոր սակս առաքեցաւ Կիկերոն յամի 51 նախ քան զԹուական Փրկչին, և գրէ առ Կատոն՝ գրաւեալ և քանդեալ զյոլովս յամրոցաց նոցին, որոց գլխաւորք Երանա, Սեպիւրա, Կոմմորին[2], և վեց բերդք. հաւանօրէն չէր հեռի 'ի սոցանէ և ամրագոյնն Պինտենիսոս, և ո՛չ թէ մինչև 'ի սահմանս Սոյ։ Հիւսիսակողման լերինք հեռագոյնք 'ի ծովէ՝ բարձրագոյնք են, և կարծի մինչև 10,000′ բարձր կատարաց լինել 'ի նոսին, իսկ 'ի ծովակողմանքս հազիւ կէս այնր չափու։ — Յայտ է թէ յայսպիսում անձուկ սահմանի՝ կարճ են և ընթացք գետոցն ինչ. յորոց՝ այսմ Ճկեր գաւառի պատշաճի նախայիշեալն Պինարոս, և համարեալ այժմեանն Տէլի–չայ, որոյ այլևայլ առաջք են. գոն և փոքրագոյն վտակք 'ի հարաւակողմանն, որպէս Պայա–չայ, և գետակն որ առ Պայասաւ, միւս առ Դրամբն՝ Մէրքէզ կոչեցեալ՝ յանուն դեղջ միոյ, և համարեալ հինն Կերսոս, Kersus. Նման սոցին են և 'ի հարաւային գաւառին Հռոսոսի՝ գետակք Պէյլանայ և Արսուզի։ Իսկ որ յայնմ կողմանէ (յարևելից) լերանցն հոսեն գետք՝ արտաքոյ են աշխարհիս Կիլիկիոյ, վասն որոյ և տեղագրութեանս։

Հանգոյն յոլովից լեռնական վիճակաց այլոց մասանց Կիլիկիոյ՝ բազմաբուսակք են և այս սահմանք, յորս նշանակէ բուսաբնինն, զատ յայլոց, Շահթառակ հասարակ և անտերև (Fumaria officinalis, F. asepala), Վառվռուկ երկայնացօղուն և Վ. խոզանուտ (Alyssum macrostylum, Al. hirsutum), * Տափկի տաւրացի (Thlaspi Taurica),* Կոկոշկ՝ այլ և այլ տեսակք (Isatis latisiliqua, Is. callifera, Is. Aucheri), Մանուշակ անուշահոտ (Viola odorata suavis),* Պարզծիլ մրտատերև (Hoplophyllum myrtifolium),* Պնդածաղիկ ողնուտ (Scleranthus verticillatus), և այլն, և այլն։

Նշանաւորք՝ քան զբարձրութիւնս և զջուրս լերանցս՝

[1] Est enim totus fontibus et rivulis irrigatus: ideo dicitur Mons Aquosus: *neros* enim grece aqua dicitur: licet rudes pro nigro accipiant. — Sanuto, III. V. 4.

[2] *Eranam* autem, quæ fuit non vici instar sed urbis, quod erat Amani caput, itemque *Sepyram* et *Commorin*, acriter et diu repugnantes, Pomptinio illam partem Amani tenente, ex antelucano tempore usque ad horam diei decimam, magna multitudine hostium occisa, cepimus, castellaque sex capita, complura incendimus. His rebus ita gestis, castra in radicibus Amani habuimus apud *Aras Alexandri*, quatriduum; et in reliquis Amani delendis, agrisque vastandis, quæ pars ejus montis meæ provinciæ est, id tempus omne consumpsimus. — Cicero, *Epist. ad Caton.* (238').

են կիրճքն կամ Նեղուցք նոցին, յորս Թէպէտ մի կամ երկու համարին գլխաւոր անուանեալ Դրունք և Անցք, բայց յոլովք են ստուգութեամբ. է որ յանուն լերանցն Ամանոսեան կոչեցեալ, և է որ յանուն աշխարհացն՝ Կիլիկիոյ և Ասորւոց. որպէս Նախ տեղագրեալքն Արսլան-պօղազ, և այլք առ Պաղչէիւ, Նրկաթի կամ Սեաւ դուռնն, և 'ի ստորև յիշեալքն՝ Դուռնն կամ Անցքն Ասորւոց-Կիլիկիոյ 'ի հարաւոյ Պայասայ, Տէկիրմէն-տէրէսի (Ջաղացաձոր), անցքն յարևելից Պայասոյ Նիւր-պէյի տէրէ, Դրունք Ասորւոց յելից Աղեքսանդրեկի առ Պէյլանաւ, Նեղուցք Պաղրասայ (Պաղրաս-պէլի), և այլք պէսպէս անուամբ կոչեցեալք. որոց ընդ մէջ 'ի հիւսիսոյ և յարևելից՝ Նիկոպոլին, այսպէս արժան համարիմ կոչել զանծանօթ նրբուղին՝ ընդ որ խուժեցին Եգիպտացիք 'ի Կիլիկիա և բաղխեցան ընդ Հայոց 'ի Մառի։ Կիկերոն 'ի Թղթին առ Կատոն [1] երկուս միայն ասէ լինել Դրունս մտից յԱսորւոց 'ի Կիլիկիա, որք Թուին Պայասայն և Պաղրասայ, կամ հիւսիսայինն՝ անուանեալն Առիծուփող (Արսլան-պօղազ)։ Ցայս բան հաւտորին յեցեալ Մարմիէ գնդապետ փռանկ (G. Marmier), որ յաւուրքս հրատարակեաց համառօտ գրուած ինչ՝ Ճանապարհք Ամանոսի անուանելով, (Les Routes de l'Amanus), ձգնի ցուցանել, ականատես գոլով տեղեացն, զի և ոչ մի 'ի յիշեցելոցս՝ է բուն և հին Կապանն կամ Դուռն Ամանոսեան, այլ անձուկ և երկայն կածանն՝ որ զուգահեռական ծովափին և սակաւուք 'ի բացեայ՝ 'ի Միւրիանդոս կամ Միւրիանդրոս հին և աւերեալ քաղաքէ, (որ է ընդ մէջ Հռոսոսի և Աղեքսանդրեկի) ձգի ընդ հիւսիս՝ ընդ բովանդակ երկայնութիւն արևելից Ծոցոյն Հայոց. և ընդ այս ցուցանէ խաղացեալ զԱղեքսանդր ընդդէմ Դարեհի, և ոչ ընդ անցս Պէյլանայ, իբրու զի չև ևս էր սա բացեալ. զի եթէ էր այնպէս՝ 'ի դէպ էր նմա ընդ այն զօրահատոյց առնել և զառաջս առնուլ Դարեհի 'ի փախստեանն, յետ ճակատամարտին Իսոսի։ Փափագելք մանրամասն ևս տեղագրութեան հրատարակելոյ 'ի քննողէն, յոր և պարապի, որպէս լուայ. մանաւանդ զի չև ևս են քաջ ծանուցեալ աշխարհագրաց՝ վայրքս, որպէս և համօրէն իսկ լայնութիւն լերանցն կամ մէջն՝ գրեթէ իսպառ անծանօթ է։ Զի որպէս 'ի հնումն՝ ըստ որում յիշեցաք, կաղաղք գողոց և հինից էին, այսպէս և 'ի նորումս անոպայ մարդկան և կողոպտողաց անցորդաց և կարաւանաց, որոց հարկ իսկ էր զգուշանալ և չմերձիլ 'ի բաւիղս և 'ի բոյնս հինիցն, որպէս Թուի յայլևայլ Թուրքման տոհմից և 'ի Քրդաց ժողովելոց, գուցէ և 'ի հնագունից ոմանց, ընդ որս և 'ի Հայոց ոչ սակաւուց. սոքա առաւել ընդ Պօզան անուանեալ ցեղի ընկերշակին, և ոխերիմ Թշնամիք էին իւրեանցանուն Հայուկ տոհմի՝ որ 'ի սահմանս Մսսայ. յահէ սոցին՝ ոչ բազում ամօք յառաջ, յանցանելն (1862) առ ստորոտովք լերանցս՝ ոչ իշխեաց բուսաբանն Քօչի մխիլ 'ի խորսն և 'ի բարձունս։

Անուանի յոյժ եղև բռնութեամբքն և բռնաւորութեամբք 'ի հուղկահարս լերանցս՝ Քիւչիւկ-Ալի կամ Խալիլ պէկ ոմն 'ի վերջին քառորդի անցելոյ դարու և 'ի սկզբան ներկայիս, զամս քառասուն տիրացեալ Պայասայ և որ շուրջ զնովաւ. Նախ երեսուն կամ քառասուն աւազակաց գլուխ կալով և կողոպտելով զքաղաքն զայն, ապա գունդ կազմելով երկերիւր արանց և 'ի հարկի կացուցանելով ոչ միայն զՊայաս, այլ և զմեծ կարաւանն Մէքքէի՝ որ ընդ այն անցանէր. և 'ի դերև հանեալ զջանս արքունի կողմնակալաց յըմբռնել զնա. ապա և շնորհս եգիտ, մինչև եռագրօշեան փաշայ կարգիլ. այլ և յայնմ ևս պատուի՝ ոչ գարշէր 'ի կողոպտելոյ և զնաւս և զինչս Եւրոպէացւոց անգամ, կամ 'ի բանտ արկանելով զըմբռնեալսն՝ պահանջել ծանր ծանր փրկանս, պէսպէս կեղծաւորութեամբ և լրբութեամբ 'ի չքմեղս լինելով. կանգնեալ էր և աշտարակս յոլովս 'ի լերինս և յանցքս նոցին, կալեալ և զԴրունսն Ասորւոց. բայց առաւել 'ի խաբէական ահարկութիւն էին աշտարակքն քան յիսկական ամրութիւն։ Սովոր էր դժպհի անզգայութեամբ կախել երկուս ոմանս առ դրամբ Պայասայ՝ 'ի ժամանակի անցից կարաւանին Մէքքէի. դէպ եղև զի 'ի միում ամի չունէր զոք 'ի բանտի և կարաւանն մերձենայր. եհարց զպաշտօնեայ իւր գտանել հնարս, և մինչ գուն գործէր սա շրջել զնա 'ի մոլեգին մտացն, նա ձեռն 'ի մօրուսն արկեալ, Գտի, ասէ. ե՛րթ կոչեա զՑակոր քրիստոնեայն, որ 'ի չորից ամսոց հետէ ջերմամբ տագնապի, և չէ ապրանաց. և ես առժամայն 'ի կախաղան հանել. և այսպէս խաղ առնելով զպետութիւնն և կեղեքելով զօտարս, և բազում անմեղ մարդիկ սպանանելով, ինքն խաղաղութեամբ զրաւեցաւ 'ի կենաց (1808)։ Ցաջորդեաց նմա անդրանիկ իւր Տէտէ կամ Տատա-պէյ. յորմէ՝ խնդրելով ուրումն 'ի զրկելոցն (գունցն Հոլանտայ) զփոխարէն զըրկանացն 'ի հօրէ նորին, պատասխանի ընկալաւ. Եթէ հարկ էր հատուցանել զամենայն զրկանս՝ զոր հայր իմ գործեաց, Թէ և ամենայն քարինք Պայասայ յոսկի փոխէին, տակաւին ոչ էին բաւական։ Զամս տասն ազատօրէն կեցեալ և սորա հանգոյն հօրն, և բազում անգամ ճողոպրեալ 'ի հնարից արքունի կուսակալաց, կամ ցըրուեալ զզօրս նոցին, յեղակարծումն՝ մատնութեամբ ձերբակալ եղև, յամի 1817, և գլխատեալ հրամանաւ Մուստաֆա փաշայի Պէյլանի՝ մարմինն հրով ծախեցաւ։ Եղբայր նորա Մըստըգ պէյ երկոտասան ամաց գոլով յայնժամ՝ փախեաւ 'ի Մարաշ, և յետ տասն ամաց դարձաւ եկն 'ի Պայաս, յորժամ Հաճի Ալի պէյ 'ի Գաբաճա տոհմէ՝ բռնացեալ ունէր զմեծ մասն Կիլիկիոյ, և հակառակ եկաց Մըստըգայ, այլ յետոյ հաշտեցաւ՝ առ 'ի նուաճել զայլս ոմանս. բայց 'ի գալ Հիւսէյին փաշայի արքունի զօրօք ընդդէմ Իպրահիմայ (1832), գնաց առ նա 'ի նեղուցս Կիլիկիոյ և անցոյց այսր զբանակն, կամելով հաւատարիմ երևել օսմանեան Դրան, և առաքեցաւ 'ի սպարապետէն 'ի Կ. Պօլիս. ուր՝ գաղտ 'ի մահ դատապարտեալ, համարի զերծեալ 'ի բանտէ եւրոպէացի ըզգեստուք և գնացեալ յարևմուտս [2]։ Իսկ Մըստըգ՝ յետ յաղթութեանց Իպրահիմայ (1832) յարեցաւ 'ի նա, և

[1] Duo sunt enim aditus in Ciliciam ex Syria; quorum uterque parvis præsidiis propter angustias intercludi potest. — CICERO, *Epistolæ*.

[2] Զգործոց Քիւչիւկ Ալի բռնաւորի և զՀամի Ալեայ, գրէ Պարքըր, գրեթէ ականատես նոցին, 'ի ծանօթ մատենին, յէջ 76-80. 89։

կարգեցաւ իշխան լերանցն 'ի վերայ երեսուն ձորատեարց (Տէրէպէյի)։ Յամի 1843 Աճմէտ Իզզէտ փաշայ կուսակալ Ատանայ կամեցաւ նուաճել զնա, և ոչ յաջողեալ խաբէութեամբ ըմբռնել, յաւար և յաւեր մատնեաց ըզՊայաս, անխնայ կոտորելով զընտանիս Մըստըգայ. իսկ նորա փախստական անկեալ 'ի Մարաշ և անտի 'ի Հալէպ, ընդ կուսակալի նորուն գնացեալ 'ի Կ. Պօլիս, յերկրորդում ամին վերադարձաւ 'ի Կիլիկիա, և առ փոքր փոքր զբռամբ էած զառաջին իշխանութիւնն. մերթ իբրև հպատակ Դրանն, և մերթ ըստ հայրենի ազատութեանն և հարստահարութեան. որում հետևող լինէին որդի իւր Խոմէր-աղա և հօրեղբօրորդին. ամենեքին ևս ապստամբք համարէին յամի 1862, յորժամ վերյիշեալ բուսաբանն դեգերէր 'ի կողմանքս, և կուսակալն Ատանայ ջանայր նուաճել զնոսա։ Մըստըգ խաղաղութեամբ վճարեաց զկեանս իւր 'ի ժամանակի կամ յետ նուաճման Խօզանեանց [1]։

Ի յիշեալ տարւոջդ (1862), ոմն 'ի մերայոց գրէր, վեշտասան գեօղս Հայոց լինել 'ի լերինսդ, իբր 600 տամբք, հաւասար գոլով քաղաքավարութեամբ Թուրքման լեռնաբնակացն. սակայն հարկ է թէ ունիցին և հայրենի աւանդութիւնս և կրօնս, որոց՝ ցանկալի է յոյժ հետազօտութիւն, մանաւանդ 'ի գիւտ հնագոյն ազգային և քրիստոնէական յիշատակաց։

152. ՎԱՆՈՐԱՅՔ ՍԵԱՒ ԼԵՐԻՆ. — Արդարև կարևոր է գիտել, մանաւանդ թէ զարմանալ ընդ այլադիմակ կերպարանս՝ զոր լերինքդ այդքիկ ընծայեցին 'ի միջի կըրկին աւագակարոյն ժամանակաց, զոր յիշեցաքն, զայժմուս և զհռոմէական դարուցն. քրիստոնէական կերպարանս ասեմ, և այնքան պայծառ փայլեալ 'ի լերինքս՝ մինչև Սուրբ անուանիլ սոցա իբր յատուկ անուամբք, որով հռչակին ստէպ առ պատմիչս մեր 'ի ԺԱ—ԺԳ դարս. իբրև զերծ և անքոյթ դադարք հոգեսիրաց, կրօնաւորաց և անապատականաց այլ և այլ ազգաց, որոց երեք գըլխաւորք, Հայք, Ասորիք և Յոյնք, երեցուն ևս աշխարհացն միջասահման գոլով տեղւոյն. յորս յարեցան և Վրացիք, ապա և Լատինք յաւուրս Խաչակրաց։ Ամենեցուն ընտրեալ զանքոյթ գոգս լերանցս, հանգունակ Լիբանանու և Սինէականին կամ ծովապատիկն Աթոսի, բոյն և բջիջ ներանձնական կենաց. գուցէ և ըստ նմանեացն՝ ոչ միայն յաղօթս 'ի վեր ամբառնալով զձեռս, այլ և 'ի գինակրութիւն ընդդէմ ասպատակողաց։ Հաւանօրէն յառաջնոց դարուց անտի հաստատութեան միանձնական կենաց՝ սկիզբն եղև նոցին աստանօր բնակութեան, մինչ 'ի շուրջ դաշտս Ասորւոց և Միջագետաց, սփռէին վանորայքն և փարախք (laura) հոգևոր հօտից. և 'ի դէպ էր թէ 'ի յառնել Սառակինոսաց և 'ի ծաւալել մահմէտական դենի՝ խոյս տային յամուրս լերանցս։ Մի ոմն 'ի մերոց պատմչաց 'ի սկիզբն կոյս ԺԱ դարու [2], ասէ վասն Ռոմանոսի Գ կայսեր, յառաջնում ամի թագաւորութեանն (1028), 'ի դիմելն 'ի վերայ Հալպայ, « Եկեալ հանդիպի » լերինն որ կոչի Սեաւ. և տեսանէ անդ բազմութիւն վա» նորէից և զմենաստանս միայնակեցաց, որք 'ի մարմնի » գոլով՝ զանմարմնոցն բերէին զնմանութիւն. որք միով » այծէիւ կամ բաճկոնաւ չատանան... երկաթի բրիչ 'ի » ձեռն առեալ՝ խոնջեալ աշխատին 'ի գարի սերմանեաց » պատրաստել զօրապահիկն կերակուր. այլ զանազան » խորտիկս և զքաղցրահամ կերակուրս՝ հանդերձ ու» րախարար գինեաւ՝ զոր մատուցակեն որթք այգեաց, » զայսոսիկ զամենեսեան աշխարհասիրաց թողին. 'ի գըլ» լուխ լերինն բարձրացեալ՝ նախամարգարէին կաճառակից գոլով՝ միշտ ընդ Աստուծոյ խօսին։ Զսոսա տեսեալ թագաւորին՝ հարցանէր արժանաւորաց իւրոց. » Զինչ են այն բազմութիւն հերետիկոսացն. և նոքա ա» սեն. Սոքա ամենեքեան երանք աղօթողաց են, որք » աշխարհի խաղաղութեան և կենաց ձերոց առողջու» թեան՝ միշտ խնդրուածս առնեն։ Պատասխանի տուեալ » թագաւորն՝ ասէ. Չէ ինձ պիտոյ աղօթք նոցա. այլ » գրեցէք յամենայն վանորէիցն աղեղնաւորս՝ 'ի ծառա» յութիւն իմում թագաւորութեանս։... Այսպէս խա» կամիտ ոմն էր թագաւորն... վասն որոյ 'ի մօտոյ հա» սանեն արժանահաս դատաստանքն Աստուծոյ 'ի վե» րայ նորա. որ 'ի նմին ճանապարհի ելեալ զօր 'ի Տաճ» կացն՝ ոչ աւելի քան զութ հարիւր կամ զհազար այր, » և անկեալ 'ի վերայ բազմութեանցն, անչափ կոտո» րուածս առնէին. և զգանձսն թագաւորին և զօրացն » առեալ յաւարի՝ դարձան 'ի քաղաքն իւրեանց. իսկ » թագաւորն մեծաւ անարգանօք փախստական եղեալ՝ » ձիաթափ անկանի 'ի քաղաքն թագաւորութեան իւ» րոյ »։ Զվրիպեալն 'ի խակամիտ թագաւորէն՝ կատարեաց խակագոյն ամիրայ ոմն Պարսիկ՝ Աւչին անուն, զկնի իբր քառասուն ամաց (1066). զի յետ ասպատակելոյ յայլ կողմանս՝ « գայր խաղայր բազմութեամբ զօրօք. » և արար ձմերոց 'ի Սեաւ լեառն, և ահագին արեան » հեղութիւն և կոտորած լինէր յամենայն գաւառն. և » բազում անձինք 'ի սրբոց կրօնաւորացն՝ մատնեցան 'ի » բերան սրոյ և յայրումն հրոյ, և եղեն կերակուր գա» զանաց և թռչնոց. և ոչ ժամանեցին ծածկել հողով,

[1] Ի վերջ կոյս 1852 ամի նախածանօթ իտալացի իշխանուհին Պելճիոյոզօ յերթալն յԵրուսաղէմ՝ իջեւանեցաւ 'ի պճնեալ ապարանս Մըստըգի, և մեծարեցաւ 'ի նմանէ. և գրէ այսպէս 'ի յիշատակարանս ուղևորութեան իւրոյ. « Mustuk-Bey, le prince du Djaour-Daghda (Կեավուր տաղի), a passé les bornes de la première jeunesse. C'est un homme d'une quarantaine d'années, grand et bien fait, d'une physionomie qui serait un peu commune, si elle n'était éclairée par de beaux yeux bleu clair, limpides, souriants, et perçants comme deux épées. Rien en lui ne décèle le feudataire ambitieux et rusé qui résiste constamment aux ordres de son souverain tout en conservant les apparences du respect et de la soumission. Il y a du bonhomme dans Mustuk-Bey, ou du moins dans ses manières et dans son langage. Il n'affecte pas le luxe oriental des pachas et des chefs de sa tribu. Son costume, sa tenue, sa maison, sa table, tout respire chez lui la plus extrême simplicité. — Derrière la maison du Bey se trouve une petite cour carrée entourée de bâtiments bas, formant un seul étage; la cour étant un carré long, les deux bâtiments de côté couvrent une superficie double environ de celle qu'occupent les constructions placées aux extrémités. L'une de ces dernières, n'est que le mur mitoyen qui sépare le harem de la maison du Bey, et où l'on a pratiqué la porte d'entrée. Deux petites portes, flanquées chacune de deux fenêtres, communiquent à chacun des bâtiments latéraux de la cour pavée de larges dalles. Le corps de logis du fond n'a qu'une porte et deux fenêtres, et il est impossible d'entrer dans ce cloître sans se rappeler l'intérieur d'un couvent de Chartreux ». — BELGIOJOSO, *Asie Mineure et Syrie*, 111.

[2] Արիստակէս Լաստիվերտցի, Զ։

» վասն զի մնացին անթաղք մինչև յաւիտեանս. և ան֊
» թիւ վանորայք և գեղք այրեցան հրով, որք երևին
» մինչև ցայսօր. և Սեաւ լեառն և ամենայն գաւառն 'ի
» ծայրէ 'ի ծայր՝ լցաւ արեամբ կրօնաւորացն և քահա֊
» նայից և արանց և կանանց, և ծերոց և տղայոց[1] »: —
փոխեցին կենդանիք զմեռեալս. դարձեալ բազմացան
կրօնաւորքն և շինեցան անապատք, այնքան՝ մինչև յետ
երեսուն ամաց 'ի դիմել յայսկոյս բանակի Ա. Խաչա֊
կրաց, ընդ Ռուբինեան և Հեթմեան պայազատաց՝ «Նոյն֊
» պէս և վանորայքն Սեաւ լերինն՝ կերակրօք օգնէին
նոցա[2] »: Յիշեն և պատմիչք նոցին արևմտեայց՝ զբազ֊
մութիւն վանորէից Սեաւ լերին, և ասեն բնակեալ և
'ի Լատինաց՝ ևս և յամենայն ազգաց[3]:

Ի յոլովից անտի վանորէից, զորոց ցանկալի յոյժ է
հետազօտել զմնացորդս՝ հազիւ թէ զտասանց ոմանց ա֊
նուանս և դոյզն յիշատակս գտեալ ցրիւ առ պատմիչս
մեր, այլ և ոչ զմիոյ զայժմու հանգամանս, աւանդեցից
իբրև սրբազան նշխարս և նշմարս ազգային յայտնու֊
թեանց, ըստ կարգի դիպացն, որք իբրև 'ի զանխուլ ծո֊
վէ յանկարծերևեաց կղզիս՝ արտադրեն զոսկին. և այս
յաճախագոյն յ' ԺԲ դարու առ կաթողիկոսութեամբ
Գրիգորեանց մերոց վկայասիրաց և բազմաշնորհ Ներսի֊
սեանց. որոց առաջին՝ Մեծ Վկայասէրն, Գրիգոր Բ, 'ի
վերջին ամս կենացն, որպէս միշտ հետամուտ էր Սրբոցն
վարուց, դեգերէր 'ի վանորայս՝ 'ի գիւտ Նորոց ևս վկա֊
յաբանութեանց. գրէ Մարկոս գործակից Նորին և ա֊
շակերտ՝ 'ի Նորին դիմաց, յամի 1102, 'ի յիշատակի
թարգմանութեան վարուց Ս. Ոսկիբերանին. «Հասաք 'ի
» Սուրբ լեառնն՝ զոր Սեաւն կոչեն, 'ի մեր սեպհական
» պարգևական եկեղեցիքն. (Ա.) Ուխտն սուրբ՝ զոր ըստ
» ասորի բարբառոյ Պառ-լահոյ կոչի, որ թարգմանի
» Դրախտ Աստուծոյ. և անդ 'ի յերեսուն և 'ի վեց ամի
» մերոյ աթոռակալութեան, թարգմանեցի զվարս ճգ֊
» նութեան մեծ և սքանչելի առնն Աստուծոյ՝ Յովհան֊
» նու Ոսկեբերանի, Կոստանդնուպօլսի հայրապետի, 'ի
» ձեռն առն միոյ՝ որում անուն էր Թէոփիլոէ, ազգաւ
» յոյն. և ապա ետու վերստին արծարծել զսա 'ի տարա֊
» բան և 'ի յօտարաձայն բայից և բառից առաջին թարգ֊
» մանութեանն, ըստ քերդողացն իմաստից՝ միաշար տո֊
» ղելով 'ի ձեռն Մարկոսի քահանայի, որ և սնեալ և
» վարժեալ էր ընդ մերով ձեռամբ »: Իսկ յիւրոց դիմաց
յաւելու Մատթէոս՝ աղերս առ կաթողիկոսն. «Ըստ կա֊
» րի մերում կրսերութեանս յանդ հանի զոր հրամայեցեր
» մեզ, ով դիտապետ սուրբ... արդ այսուհետև ընկալ
» բարեմտութեամբ զիջանելով ըստ իս՝ չմեղադրեալ իմոյ
» յանդգնութեանս. և եթէ սխալեալ ինչ իցեմ՝ ըստ մե֊
» ծի իմաստութեանդ քո ուղղեա », և այլն:

Բ. Մենաստան կամ Անապատ՝ Արիգի անուն, աս֊
պընջական եղև նմին Գիտապետի, յերկրորդում ամի
(1103), ուր եկին պատգամաւորք յՈւրհա քաղաքէ, բե֊
րելով թուղթս, հարցանել զնա վասն Ջատկին, զի խո֊
տորումն լինելոց էր 'ի Յունաց, և խիթային վիշտս կրել
'ի Նոցանէ. և Նա քաջալերեաց համբերել, զինքն իսկ օ֊
րինակ տալով. «Ես քառասուն ամ՝ կամ իմով հայրապե֊
» տութեամբ, և զիմ հայրենի տուն 'ի խաղաղութեան
» ժամանակի թողի, և յայս փոխեցայ. ապա ուրեմն
» խաբեալ եմ միայն եղէ. բայց յուսամն Աստուծոյ եմ և
» վկայութեան սուրբ գրոցս. վասն զի ուղղափառ և ան֊
» թերի ունիմ զհաւատն », և այլն: — Ըստ այսոցիկ
դեգերէր Նա և յայլ վանորայս լերանցս, հանգոյն իմն,
ասէ պատմիչ ոմն, Նախնոյն իւրոյ մեծի Լուսաւորչին.
«Սոյն օրինակ և սա 'ի Սեաւ լերինն միայնարանս բնա֊
» կէր, միշտ պարապեալ ընթերցման սուրբ գրոց և աս֊
» տուածախօս աղօթից. և դադարեալ 'ի Նոյն ճգնու֊
» թեան ամս բազումս »: Թոռն Նորա՝ Ներսէս Շնորհալի
այսպէս վիպասանէ զնմանէ.

« Մինչ 'ի Տաւրոս լեառըն հասեալ,
Անդ՝ ուր սրբոցըն բնակք եղեալ,
Եւ 'ի մարմնի հրեշտակացեալ...
Ի վայելուչ յայն վայր եկեալ
Հովուապետին ըզգօնացեալ,
Ի Սեաւ մըթին լեառն անուանեալ՝
Ուր են հոգիք լուսաւորեալ,
Զյոգնավրդով կեանըս թողեալ,
Զօր և երազ էր ծանուցեալ,
Եւ զանմարմնոց կեանս ընկալեալ.
Զբանի սիրողըն հաւաքեալ
Եւ առ ինքեան բնակեցուցեալ,
Զգիրըս Հոգւոյն միշտ ընթերցեալ,
Եւ ընդ նոսին յար խօսակցեալ »:

Ըստ նմին օրինակի և յաջորդ Նորին՝ «Գնաց յաշխարհն
» Կիլիկեցւոց ինքն կաթողիկոսն Բարսեղ, և եմուտ 'ի
» լեառն Սեաւ, ուր էին բազում անապատք և վանորայք.
» և յայնմ ժամանակի հալածումն եհաս յաշխարհն Հա֊
» յոց՝ յազգէն Իսմայէլի, և բազում գաւառք և վանո֊
» րայք աւերեցան, և մնացեալքն փախստական լինէին
» յամուր կողմանս » լերանցս, կամ յերկիր իշխանու֊
թեան Գող Վասլի՝ առ կուսն Կիլիկիոյ և Մարաշոյ: Եր֊
կոցուն սոցին և լերանցս՝ սահմանորդ էր հռչակագոյն
մենաստանն (Գ.) Շուղր անապատ, սեփական դադար
կաթողիկոսին Բարսղի, ուր և հրամայեաց տանել զինքն
կիսամահ գոլով՝ և թաղեցաւ անդէն. թէպէտ ոչ կա֊
րեմք ստուգիւ 'ի Սեաւ լերին ասել զայս տեղի, այլ զի
ոմանք այնպէս իսկ համարեցան, և հին պատմիչ վարուց
Շնորհալւոյ՝ ասէ զայն «Սուրբ անապատն պարփակեալ
» լերամբք՝ որ կոչէր Շուղր ». և ինքն Շնորհալի 'ի Վի֊
պասանութեանն,

« Ի յանապատ իմըն բնակեալ
Ի մէջ լերանց՝ Շուղր անուանեալ ».

ոմն ընդ մէջ Մարաշոյ և Սոյ ասէ, ոմն յերի Քեսնոյ,
իսկ այլ ոմն 'ի հնոց՝ ստուգագոյն տայ նշան ըստ իւ֊
րում գիտութեան, «մերձ 'ի Նոր քաղաք », ասելով.

1. 2 Մատթէոս Ուռհայեցի, ՂԶ:

3 Montagna Nigra dicitur in quo multi sunt heremitæ ex omni genere et natione, et plura monasteria monachorum, tam Græcorum quam Latinorum. — SANUTO, III, V. 4. Ըստ այսմ և Ցակոբ Վիտրիակ. Ա. ԼԲ:

այլ աւամղ, զի անծանօթ է մեզ և տեղի Նորոյ քաղաքիդ։ Հնագոյն ևս յիշատակող անուանս՝ Գրիգոր Տղայ, հեռագոյն ևս ուրեք, այն է 'ի հարաւակողմն Անտիոքայ ցուցանէ զՇուղր, այլ իբրև բերդ և ոչ վանս. զի 'ի հարաւոյ կուսէ սկսեալ նշանակել զաշխարհակալութիւն Սալահէտտինի, յետ Լաւոդիկեայ և այլոց՝ առնու, ասէ, և

« ԸզՔարն անուամբ զարմանալին
Որում ըզՇուղրըն կոչէին.
Ապա 'ի միւս կողմըն անցին
Ի հիւսիսոյ Անտիոքին »։

Ծանօթ է արդ բերդս այս 'ի կատար անմատոյց քարաժեռի, 'ի հարաւոյ կուսէ Ճիսր-էշ Շողր գեղջ, 'ի գետահովտին Որոնդէսի, և կոչի Քալաադ-Միրզէ։ Արդ եթէ ոչ ստոյգ գիտութեամբ դրից կարևոր տեղւոյս՝ փոքր մի ևս խոտորիցիմք 'ի սահմանացս, անմեղադրելի լիցուք վասն մերձաւորութեան յիշատակացն, և սննդեան և կայից երկոցուն ևս յաջորդաց յիշեցելոյ կաթողիկոսիդ, Գրիգորիսի փոքու վկայասիրին և եղբօր նորին Ներսիսի Շնորհալւոյ, որք աստանօր զարգացան և կրթեցան ընդ նորին խնամօք, և ընդ առ 'ի նմանէ կարգելոց դաստիարակաց։ Սոցա առաջին էր մանուկն տիովք և կատարեալ իմաստութեամբ Ստեփանոս քահանայ, մի 'ի փախուցելոցն յարևելեան Հայոց և եկելոց 'ի վանորայս կողմանցս։ Աստանօր նստաւ զառաջինն մանկահասակ կաթողիկոսն Գրիգորիս (1113). և յորժամ վասն անլինութեան տիոց նորին քրթմնջէին արևելեայքն, և Դաւիթ եպիսկոպոս կողմանց Վասպուրականի ընդվզեալ հաստատէր ինքնագլուխ աթոռ յԱղթամար, աստանօր, ըստ հրաշաբան գրչութեան Շնորհալւոյն, « Ի Սուրբ Լեառնն » մեծաւ հանդիսիւ սուրբ և առաքինեաց ազգիս Հայոց » ժողովոյ՝ աւելի քան զերկու հազար և զհինգ հարիւր » անձանց, եպիսկոպոսաց, վարդապետաց, հարց վանականաց և միանձանց Սրբոյ Լերինն, նզովեալ հերքեցան յեկեղեցւոյ Քրիստոսի, և սրով բանին Աստուծոյ » հատեալ 'ի բաց ընկեցան », և այլն։ Աւաղիկ և մեծ հեղինակս այս երևեցուցանէ զՇուղր 'ի Սուրբ լերինն, ուր ասէ զժողովն գումարեալ. և յո՞ր 'ի վանորէիցն պատշաճ էր գումարել՝ քան թէ ուր աթոռն իսկ էր հայրապետին։ Այլ մեզ նշանագոյն ևս իցէ թիւ գումարելոցն 2500 անձանց, որոց հարկ է թէ մեծագոյն յոյժ մասն էր վանականաց և միանձանց Սրբոյ լերինն, զի ժողովուրդ ոչ յիշէ Սուրբն. ապա զէթ երկու հազար համարելի է զթիւ անդր ժողովելոց կրօնաւորաց. և ըստ այսմ թէ ոք կամիցի՝ բաշխեսցէ 'ի վանորայս։ Զյոլովութիւն և զգլխաւորութիւն սոցին՝ յայտ առնէ և այն, զի հաւատարմաց աթոռոյ իւրոյ՝ գրէր Գրիգորիս կոնդակս օրհնութեան, « Ամենայն վանորէիցդ Սեաւ լերին և շրջակայ » եպիսկոպոսացն ձեռագրով », ըստ Վարդանայ Պատմչի։ Դարձեալ առանձինն յիշի և Գրիգորի Դ (Տղայ) 'ի ժողով (Հռոմկլայ, յամի 1191) հրաւէր առաքել « և 'ի » Սուրբ լեառն որ Սեաւ կոչի », որպէս գրէ Լամբրոնեցին. որ և ինքնին ոչ յառաջ քան զբազում ամս՝ առաքեցաւ 'ի Ս. Շնորհալւոյն՝ այն ինչ ձեռնադրեալ քահանայ, « 'ի վանորայս 'ի Սեաւն լերին. յորս շրջելով » գործիական նիազութեամբն և տեսողականին կրթու» թեամբ՝ յառաջէր, և նկրտէր հասանել 'ի լրումն առաքինութեան՝ 'ի սէրն Քրիստոսի », ըստ բանից կենսագրի նորին։

Երկու ևս 'ի վանորէիցն յիշին 'ի սմին իսկ ժամանակի, թերևս և յամի 1114, և են (Դ), Բարսեղանց անապատ, և (Ե), Վարդկուն, 'ի դժպհի դիպուածի, այն է մեծի սասանութեանն երկրի՝ յԵփրատական կողմանց մինչև 'ի Մարաշ և 'ի Սիս. « Եւ եղև 'ի Սեաւ լեառն յանուանի » անապատն որ կոչի Բարսեղեանց՝ էին ժողովեալ յեկեղեցորհնէք՝ սրբասնեալ կրօնաւորք և վարդապետք Հայոյ, և կային 'ի պաշտօն Աստուծոյ. անկաւ եկեղեցին » 'ի վերայ նոցա, և երեսուն կրօնաւորք և երկու վարդապետք կատարեցան 'ի ներքոյ նորա, որ կան մինչև » ցայսօր[1] ». ըստ պատմչիս՝ 'ի նոյն ժամէ կործանեալ և Ցեսուանց մեծ անապատի, որ մերձ 'ի Մարաշ, « մեծ և » փառաւոր վարդապետն Հայոց Գրիգոր, որ ասի Մաշ» կուոր, 'ի նմին տեղւոջ կատարեցաւ ». բայց Կիլիկեցի պատմիչն յիշելով զմահ ամենայն կրօնաւորաց 'ի Ցեսուանց վանս, յաւելու. « Եւ մեծ վարդապետն Մաշ» կեւորն՝ կատարեցաւ 'ի Վարդկուն ». ուրեմն յորիչ վանս։ — Ցարեսցուք 'ի յիշատակ սասանութեան երկրի կողմանս և զմիւս ևս մեծ սասանութիւնն՝ իբր հարիւր յիսուն ամօք յետոյ, այն է յամսեան մայիսի 1269 տարւոյ, յաշխարհիս Կիլիկիոյ, և ըստ Պատմչին, « ևս առաւել առ լերամբն որ Սեաւ կոչի »։ — Բարսեղաց մենաստանն կամ անապատ՝ թուի մի 'ի գլխաւոր վանորէից, յանո՞ն մեծի հայրապետին թէ այլոյ՝ ոչ գիտեմ, այլ ոչ հաւանիմ նոյն լինել ընդ Շուղրի, որպէս հայագէտ ոմն (Տիւլորիէ) գրէ։ — Նշանագոյն թերևս էր քան զայն՝ յաճախագոյն յիշատակեալն (Զ) Մաշկեւոր կամ Մաշկաւոր. զոր 'ի դէպ է կարծել հաստատեալ 'ի սոյն իսկ 'ի տարաբաղդիկ վախճանեալ փառաւոր վարդապետէն Գրիգորէ, 'ի սկիզբն ԺԲ դարու. քանզի և Վահրամ՝ վասն Ա. Թորոսի՝ որ յայն ժամանակս սկսեալ էր ձեռն արկանել 'ի վերայ Կիլիկիոյ, ասէ, շինեալ

« Եւ վանորայս յոյժ հռչակեալ.
Ցորոց Դրազարկն է մակագրեալ,
Եւ Մաշկեւորն անուն ձայնեալ ».

և ըստ այսմ՝ մի 'ի հնագունից դաստակերտաց Ռուբինեանց է, թերևս և յոգունց գերագոյն. և ոչ հեռի յայսմ ժամանակէ, այսինքն մերձ 'ի կէս ԺԲ դարու գրեալ է անդ կէս երկաթագիր և կէս հին բոլորաձև ճառընտիր մի, որոյ գրիչ ստէպ յիշէ և զվանահայրն « Զստացաւղ սորա զՀայր Դաւիթ, և զքեռին իւր, որ » ետուն գրել մեծաւ փափագմամբ և յաւժարութեամբ » սրտիւ. որում տացէ Տէր պարգևս բարիս և վարձս » բազումս գտանել 'ի Տեառնէ մերմէ Ցիսուսէ Քրիս-

[1] Մատթէոս Ուռհայեցի յ՚ 12 մարերի ամսոյ և յաւուր կիւրակէի տօնի խաչգիւտին ասէ զչարմն. ըստ այժմեան տօնակարգութեան՝ 'ի դէպ գայ տօնդ յայնմ ամի՝ 25 աւուր հոկտեմբեր ամսոյն Լատինաց, այլ երկոտասանն մարերեայ զուգի ընդ 29 նոյեմբերի։

» տոսէ… Եւ զեղբայր սորին զԳրիգոր, որ 'ի Քրիստոս է փոխեալ, յիշեցէք 'ի Տէր ». — « Եւ զամենայն ժառանգաւորք ուխտիս Մաշկեւոր վանացն՝ յիշեսջիք յաղաւթս ձեր, ո՛վ պատուելի մանգունք Սիոնի » սրբոյ »։ Գուցէ նոյն ինքն Մաշկեւոր վարդապետն է յիշեալդ Գրիգոր ։ Նոյն գրիչ այլուր մաղթէ « յարութիւն կենաց Պետրոսի (ումեմն) և ամենայն եղբարց » Մաշկեւոր անապատի »։ Ոչ լոկ մենաստան էր տեղիս այս, այլ եպիսկոպոսանիստ աթոռ Թեմական, ըստ յիշատակի եպիսկոպոսացն 'ի ԺԴ դարու, յորոյ 'ի սկզբան՝ 'ի ժողովի Սսոյ (1307) գտաւ Թորոս եպիսկոպոս. յամի 1325 յիշէ Բարսեղ « զվերակացու և առաջնորդ » սուրբ ուխտիս Տէր Հայրապետ եպիսկոպոս, այր հեզ » և բարեբարոյ, որ բազում խնամօք խնամէր զմեզ ամենայն մարմնաւոր պիտոյիւք, և իբրև զհայր հոգևորապէս 'ի միշտս և 'ի տրտմութիւնքս՝ սփոփէր և մխիթարէր. վասն որոյ աղաչեմ… յիշեցէք զսա 'ի բարին, » և խնդրեցէք յԱստուծոյ, զի ըստ տրոցն և բարի կամացն իւրոց՝ զոր առ մեզ ցուցեալ է, տացէ սմա աստ » հարիւրապատիկ, և անդ՝ իւր և ծնողացն իւրոց ընդ » կեանսն յաւիտենից պարգևեսցէ »։ Ցետ սորա յիշի Գրիգոր յամի 1242. և սա թուի առաքեալն 'ի Կի Թագաւորէ ընդ այլոց՝ առ Քահանայապետն Հռովմայ յամի 1344, վասն խնդրոյ բանի հաւատոց. 'ի լատին թղթի Mascare գրեալ է անուն տեղւոյն՝ իբրու Մաշկուոր արտասանութեամբ ։ Գրիչ աւետարանի միոյ 'ի Նախայիշեալ ամի գետնաշարժին (1269), ասէ սկսեալ « 'ի մեծանուն եղբայրանոցն Մաշկաւոր կոչեցեալ, առ Դուռն » Սուրբ Կարապետի », ծանուցանելով այսու բանիւ՝ և զանուն եկեղեցւոյն ։



Ցառաջին կէս ԺԴ դարու՝ առ առաջնորդութեամբ Տեառն Հայրապետի՝ բարգաւաճէր 'ի վանս յայս մի 'ի յետին վայելչաբան գրչաց մերոց, Բարսեղ, ծանօթ մեկնիչ Մարկոսեան աւետարանի, յորոյ յիշատակարանի գրէ. « Ես լոկ անուն վարդապետս Բարսեղ՝ զմեկնութիւն սրբոյ աւետարանիս որ ըստ Մարկոսի ('ի գլուխ » հանի), որչափ աջողեաց և զօրացոյց՝ տալով մեզ միտս » և բանս՝ Հոգին սուրբ Աստուածն ճշմարիտ… մեծ տաժանմամբ և յոլով աշխատութեամբ եղև գրաւ սորա…։ » Եւ գրեցաւ սա 'ի վանս որ կոչի Մաշկուոր ». ապա յիշէ զառաջնորդն Հայրապետ, և այլն ։ Նա և 'ի կարգի բանից մեկնութեանն կամ 'ի յորդորակս ճառիցն՝ խառնէ երբեմն զյիշատակս արկածից ժամանակին, յորմէ և մեք յիշեցաք զԱյասոյ առումն. և սոէպ յուսադրութեամբ մաղթէ, զի Տէր « խնամեսցէ և զսակաւ ինչ մնացեալքս՝ սիրով և գթութեամբ, և աճեցուսցէ և բազմացուսցէ առաւել քան զչափն առաջին. և արասցէ մեզ » դարձեալ տեսանել զաւերակսն և զանմարդաբնակսն՝ » վերստին շինեալ և լցեալ բազում բնակչօք. մինչ զի ասիցեն, թէ Նեղ է մեզ տեղիս, ընդարձակեսցուք »։ Ցայտ է թէ ոչ միայն յառժամայն դէպսն ակնարկէ Բարսեղ, այլ և որ ոչ բազում ամօք յառաջ, որպէս և յետոյ, յարշաւանս Եգիպտացւոց. յորս որոշակի յիշի յամի 1276 արագ արագ դիմումն նոցին « 'ի կողմանս Սեաւն կոչեցեալ լերին »։ Այն զի և Գրիգոր Անաւարզեցի՝ որ բազում ամօք յառաջ քան զայս թուականս վախճանեալ էր, 'ի թղթին առ Հեթում Բ յիշէ ուրեք, 'ի Մեկնութեան Մարկոսի գտեալ վկայութիւնս վասն բաժակին։ Ի շարագրութեան մատենիս երևի այլևայլութիւն ոճոյ, ուրեք ըստ դասական մատենագրաց ընտիր, և ուրեք մերձ 'ի պարզախօս լեզու դարուն (ԺԴ), վասն որոյ թըւեցաւ ոմանց յայլ և այլ մեկնչաց բանից յարմարեալ նորա գիւրն. այլ զի պակասէ առ մեզ առաջին մասն կամ հատոր Մեկնութեանն՝ ոչ կարեմք հաւաստել. որ զիարդ և է՝ կարէ Բարսեղ փառաւորիլ ընդ գրիչս ԺԴ դարու՝ որ 'ի Ս. Լերինն։ Այլ ոչ նոյնպէս Վահրամն Սեւլեռնցի, որ առ Ա Հեթմով գրեաց յախուռն ընդդէմ Լատինաց, և ոչ գիտեմ յո՛ր վանաց էր։

Է. Մի 'ի հնագոյն յիշեցելոց վանորէից և տեղի վարժման Սարգսի մեկնչի Կաթողիկեայցն Թղթոց, է վանքն Քարաշիթաւ կամ Քարաշիթու, որ ըստ համառօտողի վարուց Նորին՝ այսպէս կոչի յասորի լեզուէ. և էր « Սուրբ ուխտ ձգնաւորաց », ուր Նա « արար իւր բնակութիւն… անդ աւարտեաց զաստուածային մատեանս » (յամի 1156), և 'ի նոյն տեղի կան սուրբ նշխարք ոսկերաց Նորա »։ Նոյն ծանօթարար, Կարապետ վարդապետ, գրէ. « Հոգւոյն արժանացեալ՝ երից երանեալ և » քաղցրաբան քարոզն եկեղեցւոյ, քաջ հռետոր և ան-

» յաղթ փիլիսոփայն, վեհագոյն գիտնականն, և մեծ
» վարդապետն Հայոց՝ Տէր Սարգիս, լուսաւոր տեսու֊
» թեամբ և յորդառատ մեկնութեամբ. միանգամայն
» յայտնապանեալ գրեթէ զամենայն զօրութիւնս աս֊
» տուածաշունչ գրոց հին և նոր կտակարանաց, օրինաց
» և մարգարէից, առաքելոց և աւետարանչաց, ուղղա֊
» դաւան վարդապետաց և ճշգրտաբան պատմողաց »։
Ըստ բաւականին ծանօթ է բանասիրաց մերոց մեծա֊
զանգուած և յորդառատ մեկնութիւնս այս. յորոյ երկա֊
րութենէ և ինքն իսկ հեղինակն խիթացեալ՝ թէ ոչ բաղ֊
մաց լիցի տեսել յընթերցումն, յետ տասն ամաց արարեալ
է զհամառօտութիւն գրոցն (1166). որպէս և գրէ ինքնին
գոլ « աշխատող գրոցս 'ի յերկս բանի մեկնութեան Նա֊
» խագունիցն, և ապա 'ի համառօտել զպիտանացուն՝
» ընթերցող լուսամիտ համբակացդ ուսումնասիրաց և
» քրիստոսասիրաց. զորս աղաչեմ սիրով Հոգւոյն և մաղ֊
» թեմ թախանձելով, մի՛ անտես առնել զերկայն ժամա֊
» նակաց աշխատութիւնս իմ... և որք յիշէքդ աղաչելով
» վասն իմ ծերոյս Սարգսի՝ զՏէր, յիշեալ լիջիք և դուք
» յամենեցունց Արարչէն »։ Եւ դարձեալ գորովական բա֊
նիւք. « Իմ աղաչանք են առ ձեզ, եղբարք, սիրելիք Ա֊
» տուծոյ և սիրեցեալք 'ի Քրիստոսէ, և արտասուօք
» պաղատանք, չառնել անտես զերկայն ժամանակաց
» աշխատութիւնս իմ յերկս վաստակոյ բանիս. այլ ըն֊
» կալարուք ձեզ՝ 'ի փչոց վարդ և 'ի տատասկէ թուզ,
» և 'ի մորենւոյ խաղող, և 'ի խորաձորոցն՝ զակնս պա֊
» տուական, և 'ի գաղտակրայէ զմարգարիտս գեղեցիկս.
» և ինձ հիգոյս տուք վարձս բարեաց՝ զաղօթս և
» զողբս հառաչանաց.... ինձ եղկելւոյս Սարգսի....։
» Հայ թուականն յայնմ ամի յորժամ կատարեցի զհա֊
» մառօտս՝ յիշատակ ինձ և իմոցն և 'ի վարժումն ման֊
» կանց Նորոյ առագաստի մօրս մերոյ վերին Երուսաղե֊
» մի՝ ՇԺԵ էր ընդ վեցհարիւրի »։ Զայսոսիկ և զնման մաղ֊
թանս ծերոյ մեկնչին, (որ արժանացաւ հանգոյն ուսու֊
ցակցին իւրոյ Սրբոյ հայրապետին Ներսիսի՝ մականուա֊
նիլ Շնորհալի), ընդօրինակեն ամենայն գաղափարողք
գրոցն, յաւելեալ նմին յինքեանց բազում գովասանական
մակդիրս, ըստ արժանւոյն. զի արդարև ընդ Ներսիսի և
հարազատի նորին Գրիգորիսի և Իգնատիոսի՝ կազմէ
զպանծալի քառեակն աշակերտաց Ստեփանոսի գիտնա֊
կան քահանայի, վեհագունից ծանուցելոց 'ի հսկողս վա֊
նօրէից Սեաւ լերին. որոց հետևող և բազում մասամբք
գերագոյն հանդիսացաւ անդ սուղ զկնի՝ մեծն Լամբրու֊
նեցի, և հուսկ՝ վերոյգրեալն Բարսեղ Մաշկեւորցի. այլ
ընդ մէջ երկոցուն յետնոցս՝ զեօթնասաներան բոլոր֊
րէ հեռաւոր ոմն եկ բազմահանճար, ուսումնասէր և Մեծ
վարդապետ կոչեցեալ, Մխիթար Գոշ. որոյ ոչ չասա֊
ցեալ ուսմամբ արևելեան վարդապետացն, « չոգաւ յարև֊
» մուտս կոյս՝ յաշխարհն որ կոչի Սեաւ լեառն, առ վար֊
» դապետքն որք էին անդ ուսուցիչք. և զայն ինչ 'ի վեր ոչ
» հանեալ՝ թէ իցէ նորա առեալ զայն պատիւ, այլ բազում
» ինչ օգտեալ 'ի նոցանէ » դարձաւ այլուր։ — Բանասէրք՝
գրեաթէ անանջատ ունին զյիշատակ Սարգսի՝ յուսու֊
մնակցէն իւրմէ Իգնատիոս վարդապետէ, 'ի քաջածա֊
նօթ մեկնչէ Աւետարանին Ղուկայ, ներհակաբար ընկե֊
րին՝ համառօտաբան, կուռ և սեղմ ոճով, այլ բաւական
իմաստիւք, և յստակ դասական հայկաբանութեամբ։
Բայց մեր յիշատակելս զսա՝ ոչ վասն ընկերակցութեանն

186. Աւետարան գրեալ 'ի Մաշկեւոր վանս [1].

և դպրութեանցն է, այլ զի 'ի նոյն լեռնափակ համալսա֊
րանս վարժեցաւ, և յայլում մենաստանի գրեաց զոսկե֊
ղինիկ և զմիակ ծանօթ մեզ մատեանն այն Մեկնու֊
թեան. և կոչէր մենաստանն, (Ը) Շափիրին։ Ծանօթ
է դպրասիրաց մերոց աւանդութիւնն, թէ ուստի՛ չարժե֊
ցաւ կամ ստիպեցաւ դա չարագրել զՄեկնութիւն աւե֊

[1] Տես 'ի հանդիպոյ յէջ 408 ։ Աւարտ գրչութեան մատենիս եղեալ է յԱնդրէասանց վանս, որպէս ծանուցաւ 'ի կարգին, յէջ 149 ։

*տարանին. վասն որոյ շատասցուք աստանօր բանիւ Վա֊
նական վարդապետի, որ թուի իմն կամեցեալ իւրով կար֊
ճառօտ բանիւ հաճոյանալ համառօտաբան մեկնչին. «Ի֊
» գնատիոս՝ որ զՂուկաս մեկնեալ է, 'ի Շափիրին ելեալ
» էր. տեսեալ էր 'ի տեսլեան տուն լի լուսով, և 'ի ներքս
» նստեալ Աստուածաբանն և վարդապետք. ինքն ջա֊
» նայր 'ի ներքս մտանել, և արգելուին և ասէին. Եւ դու
» լեր մեկնիչ, և ապա մտանիցես: Զի յառաջ շատ հար֊
» կեալ էր զնա Գրիգորէս կաթողիկոսն՝ որ զՀռոմկլայն
» էառ. և նա ոչ հաւանէր՝ անարժան զինքն ասելով. ա֊
» պա յանձին կալաւ »:*

**Թ.** *Հնագոյն ևս յիշատակաւ, թէ և չիցէ աւանդու֊
թիւնն ստոյգ, յայտնի վանք մի ևս 'ի սրբազան լերին֊
քըս՝ տարօրինակ անուամբ, 'ի Պատմութեան Գետար֊
գել խաչին. ընդ որոյ զօրութիւն հիացեալ Վասիլ կայ֊
սեր, ըստ պատմչին, « յետ ժամանակաց գնաց երեք
» հաւատարիմ արամբք 'ի Սեաւ լեառն, և եմուտ 'ի
» վանքն որ կոչի* Պաղակ-ծիակ, (*կամ ըստ այլ գրչի
»* Պաղակ-ձագ), *և ծանոյց նոցա զկամս իւր. և առ 'ի
» սուրբ հօրէն (վանացն) զքրիստոսական կնիքն 'ի Հա֊
» յոց. և յայնմ հետէ եղև իբրև զհայր ազգիս Հայոց,
» և շնորհեաց վանացն 'ի ծառայութիւն՝ երկոտասան
» գեօղս »: Զայս հաւատալով երկրորդէ և Կիրակոս
Պատմիչ, եթէ « Եկեալ յաշխարհն Կիլիկեցւոց՝ մկըր֊
» տեցաւ (!) 'ի Հայոց, 'ի վանքն որ կոչի Պաղակ-ձիակ,
» և ետ վանացն գիւղս և այլ ինչս բազում »:*

**Ժ. Ս. Գէորգ** *Լատինաց Բենեդիկտեան կրօնաւորաց,
որոյ աբբայ Անգեր* (Angerius) *անուն յիշի յամի* **1140.**
*դարձեալ, Պերդրանտ (որդի Ռենալտի Մասսերիոյ տեա֊
ռըն Մարկադ բերդի և Վալենիոյ քաղաքի), յամի* **1186**
*հաւանութեամբ Բրնձին Անտիոքայ Պեմունդի շնորհեաց
զտեղին 'ի կալուած Երուսաղեմի ասպետաց, ընդ նմին
գեօղս և շէնս և ագարակս յոլովս.* Abbatiam *Sancti
Georgii*, quæ est in Montana Nigra, cum casalibus et
guastinis et divis et pertinentiis suis. *Ամաւ յառաջ քան
զթուականդ, այն է* **1185**, *Ռուբէն Բ Պարոն Կիլիկիոյ՝
ըմբռնեալ դաւով 'ի Բրնձէ այտի Անտիոքայ՝ ընդ այլոց
տեղեաց ետ նմա զՃկեր 'ի փրկանս, որ էրն գլխաւոր
տեղի կամ բերդ կողմանցս, ընդ որում՝ յայտ է թէ և որք
ընդ նովաւ տեղիք՝ նոյնպէս 'ի տուր տուան. բայց փու֊
թով թափեցան 'ի Լևոնէ: Զառաջինն ասի հօր սոցա
Ստեփանէի՝ նուաճեալ զկողմանքս ձեռնտուութեամբ
եղբօր իւրոյ Թորոսի մեծի իշխանի, որպէս յիշէ և Վա֊
հրամ 'ի վիպասանութեանն.*

*« Բայց Ստեփանէն նախաստացեալ՝<br>
Որ էր եղբայր մեծին եղեալ,<br>
Ի Սեաւ լերինըն դադարեալ,<br>
Եւ քաջութեամբ զայն ըմբռնեալ »:*

*Միւս ևս, (ԺԱ), մենաստան էր Լատինաց Կիստերսեան
միանձանց՝ 'ի լերինքս, Ս. Սարգիս,* de Jubino *մակա֊
նուանեալ, և յիշեալ յ' ԺԲ դարու: — Որիչ 'ի լատինա֊
կան վանիցս էր աներկբայապէս, (ԺԲ), Ս. Գէորգ վանք
Հայոց, թէպէտ չասի յայտնապէս 'ի Սեաւ լերինս լի֊
նել, այլ հաւանելի է. զի միւսն որ 'ի Գահս Կիլիկիոյ՝
վաղ ուրեմն խափանեալ էր, և տեղին ընդ այլազգեաց
ձեռամբ անկեալ: Արդ այս Ս. Գէորգայ վանաց առաջ֊
նորդ համարիմ* զՆերսէս, *որ առեալ իւր ընկեր զմի 'ի
վանականացն՝ Յակոբ անուն, հաւանօրէն յետ մահուան
Կոստանդնի Բ թագաւորի, երթեալ էր յարևմուտս
յուխտ, թերևս և 'ի հաւաքել անդ նուէրս 'ի պէտս շի֊
նութեան և նորոգութեան եկեղեցեաց և վանորէից՝ աւե֊
րելոց յասպատակաց. և 'ի սկիզբն* **1364** *ամի գոլով 'ի
Լոնտոն, ընկալաւ յԵդուարդայ Գ թագաւորէ գիր ըն֊
ծայութեան (յ' 7 փետրուարի) առ հպատակս իւր, շրջել
յուխտս աշխարհին Անգղիոյ՝ մինչև ցամ մի: Իբրև մի 'ի
յետին յիշատակաց յարընչութեան Սիսուանեայց ընդ
եւրոպական պետութեանց՝ կարևոր համարեցի զարգու֊
նական բնագիրն արկանել 'ի կարգ ծանօթութեանցս* [1]:

*Ցուեցի յանուանեալ վանորայսդ և ԺԳ, անանուն,
այսինքն մեզ անյայտ՝ մենաստան մի Սեաւ լերին, յորմէ
'ի սկիզբն ԺԴ դարու, նեղեալ 'ի ստէպ արշաւանաց Ե֊
գիպտացւոց, յաւուրս Հեթմոյ Բ, խոյս տուեալ վանա֊
հայրն* Մարտիրոս՝ *միով ընկերաւ, զոր Գուլիելմոս կո֊
չեն Լատինք (զի առ նոսա գտանի վաւերական պատմու֊
թիւնս), եկին 'ի Գենուա, նաւուք նոցին Գենուացւոց, և
շնորհս գտեալ 'ի քաղաքացեացն, խնդրեցին 'ի Քահանա֊
յապետէն (Կղեմայ Ե) հաստատել անդ վանս. որում
հաւանեցաւ սա կոնդակաւն 'ի* **20** *փետր.* **1307.** *բայց ոչ
կարելով նոցա գտանել տեղի պատշաճ 'ի քաղաքին՝ ձեռն
արկին արտաքոյ՝ այլ ոչ հեռի՝ կառուցանել վանս և եկե֊
ղեցի մի փոքր յանուն Ս. առաքելոյն Բարդողոմէոսի,
յագարակի բարեպաշտի ուրումն՝ որ ետ նոցա զտեղին. և
վերստին խնդրեալ՝ ընկալան 'ի Քահանայապետէն ըզ֊
հաստատութիւնն, հանդերձ շնորհիւ՝ յարելոյ 'ի նոյն և
գերեզմանատուն: Զայս ամենայն ծանուցանէ միւս ևս
կոնդակ Կղեմայ (յ'* **2** *ապրիլի,* **1309**), *ուղղեալ առ Մար֊
տիրոս առաջնորդ եւ առ բնիկերուբիւն տանն Հայոց Սեաւ–*

1 Rex (Edoardus) omnibus Ballivis et fidelibus suis, ad quos, etc. salutem.

Venientes ad nos religiosi viri, Fratres *Nersis* abbas Monasterij *S. Georgij* in Armenia Minori, et *Jacobus* ejus commonacus, nobis cum instantia supplicarunt, ut cum regnum Armeniæ, in quo christiana fides vigere solebat integra et devota, jam per Saracenorum nefandam rabiem sit hostiliter occupatum, qui Sanctuarium Dei prophanantes, dictum Monasterium, inter alios ecclesias, submiserunt incendio, arasque destruunt in dies et subvertunt, ac, quod deterius est, omnes Christianos comprehendos, diversis affectos contumelijs, interficiunt, non parcentes ordini vel ætati; et sic ibidem christiana religio proscribitur, Christoque fideles in fugam per timore conversi, per orbem terrarum mendicantes, ducunt in miseria dies suas. — Velimus ipsis, Abbati et Monacho, sic in dispersionem abeuntibus, et vitam ducentibus peregrinam, licentiam concedere gratiose, quod ipsi in regno nostro Angliæ, sub alis nostræ protectionis aliquandiu morari valeant, limina visitaturi Sanctorum; Nos intuitu summi Regis, qui se vult in peregrinis et advenis honorari, volentes eosdem Abbatem et Monachum favore prosequi gratioso, licentiam illam eis duximus concedendum, suscipientes, ex uberiori dono gratiæ eos et eorum res et bonas quæcumque... (*Որ էր կրկնեալ յօրինակին աւարտն, որ գրեալ էր 'ի բուն ընծայական թղթին, որպէս յայտ առնէ նշանակեալն 'ի լուսանցսն, թէ* ut in Litteris de conductu).

In cujus, etc. Per annum unum duraturus.

Teste Rege apud Westm. (*Ուեստմինստր*). VII. die Februarij.

Per ipsum Regem.

լեռնեայց 'ի կարգէ Ս. Բարսղի [1]։ Այս եղև մայրավանք այլոց յոլովից յայլ և այլ քաղաքս Իտալիոյ, որք կոչէին վանորայք Բարսեղեանց կամ Հայ Եղբարց (Frati Armeni), թէ և յետ սակաւուց Իտալացիք միայն կրօնաւորէին 'ի նոսին. այլ անուն Հայ եղբարց և կարգի՝ տևեաց ցբարձումն ուխտին՝ յամի 1650։ Իբրև ազգի նախագոյն ծանօթացելոյ Քրիստոսի՝ ոմն յազնուաց Գենուայ զհրաշալի Պատկեր Դաստառակին, որ բերեալ էր յարևելից, կտակեաց վանականացն այնոցիկ Հայոց, ուր և ցարդ պատուի մեծապէս, և յանուն Հայոց կոչի տակաւին եկեղեցին, յորում կայ և տապան հայագիր, այլ նոր թուականաւ 1687 ամի։

Այսքան վանորէից յիշատակք 'ի Սեաւ լերինս, թէ չիցեն բաւականք 'ի նշան յոլովութեան նոցին և 'ի հռչակ, շատ համարեսցին 'ի հաւաստս այնր և 'ի փափագ, իցիւ թէ և 'ի յաջողութիւն՝ հետախուզութեան սրբոց տեղեացն. յորոց հրաժեշտ կալեալ արդ՝ իջցուք յաստորոտով նոցին 'ի ծովեզրն, 'ի դաշտայինն Ճկեր, եթէ օրէն իցէ այսպէս անուանել զանձուկ միջոցն ծովափնեայ՝ մինչև 'ի լերինսն։

133. ՃԿԵՐ. — Այս անուն գաւառի լսի առ մեզ՝ միայն յաւուրս Լևոնի Մեծի, և երևի վերաբեալ յամուր բերդէ միոջէ, որոյ տեղի անյայտ է առ 'ի մէնջ, և անունն 'ի բազում դարուց լռեալ. միայն մերձաձայն լսի Ճաւեր լեառն 'ի հիւսիսակողմն Աղեքսանդրեկի ։ Զառաջինն 'ի յայտ գայ Ճկեր 'ի յետին ամս Ռուբինի՝ եղբօր Լևոնի, որ ետ զայն 'ի փրկանս իւր՝ հանդերձ Թլաւ և Սարուանդիքարիւ։ Առ թագաւորութեամբ Լևոնի՝ իշխան Ճկեր բերդի էր Աւստ ոմն Տիբերիացի կամ տէր Տիբերիայ, յայտնապէս փռանկ կամ գերմանացի, 'ի ստորագրեալն Սմբատ պատմչի Օստեր գրեալ. 'ի լատինն Hostius de Tiberiade, 'ի պարգևագրի միում Լևոնի, յամի 1214։ Յայսմ ամի թուի Ճկեր յարքունիս գրաւեալ. քանզի զողջոյն իսկ զգաւառն զայն ետ Լևոն 'ի գրաւ՝ երկամեայ պայմանաւ՝ առ ասպետս Հիւրանոցին, փոխանակ քան հազար սառակինեան բիզանդաց՝ զորս էառ 'ի նոցանէ, վասն տալոյ պաշտպանականս դստեր իւրոյ Ռիթայ, 'ի հարսնացուցանելն զնա թագաւորին Երուսաղեմի Յովհ. Պրիենայ։ Ի նոյն ամս (1216) 'ի յիշատակարանի ուրեք վերագրի գաւառն Ճկեր «'ի ծովեզերս Ովկիանոսի»։ Ի յետկարի գրաւադրութեանն Լևոնի՝ (կնքելոյ 'ի Տարսոն 'ի 23 ապրիլի), յանուանէ նշանակին տասն տեղիք, զորս նոցին սարօք՝ և 'ի նմին գաւառի՝ յանձնէր ասպետացն, իբրև իւր և իւրոց պարոնայց սեփական կալուածս. Que mea sunt et fidelium Baronum ac aliorum hominum meorum. Տեղիքն են, շատք անծանօթք, Պայաս՝ Աբայեսա գրեալ, Abaessa, Ագնիաս, Agnias, Լակրատ, Lacrat, Քարտէզ?, Gardessia, Եուկ-Ուտեման, Jucuteman, Եուկ-Մէլիք, Jugmelic, Քէնիզ, Keniz, Նղիր, Եուկ-Մարզեպան, Jugmarzeban, և Նաւահանգիստն Կալամելլա, կանխաւ տեղագրեալ։ Միայն յետին 'ի գեօղիցդ ծանօթ է ցարդ անուամբ և դրիւք, Շուք-Մէրզիվան կոչեցեալ և յոմանց գրեալ Զօք-Մէրզէմէն. յորմէ 'ի դէպ գայ նոյնպէս ոչ Եուկ՝ այլ Շուք կամ Ճուկ արտասանել զյարադրականն Մէլիք և Ուտեման գեօղից ևս, թէպէտ ինձ անծանօթ է նշանակութիւն բառին. իսկ տեղին է առ ստորոտով լերանց 'ի խաղս Պինարոս գետոյ (Տէլի-չայի), և ասի 150 տանց Հայոց լինել անդ. ուր և աւերակք նշանակին. որպէս և հուպ նմին 'ի հիւսիսոյ յՕձագլը [2] աւանի, յորում 120 տունք Հայոց, և 'ի հարաւոյ Քիւզալի և ըստ ոմանց Կիւզէլլի գեղջ. յորոց 'ի հարաւոյ՝ այժմեան գլխաւոր չէն կողմանցս՝ Եիւզէրլիք կամ Եիւզլէր, 120 տամբք Հայոց. թերևս առնու զանունն յԱզիր عزير վիճակէ, որ և ողջոյն իսկ գաւառի միոյ անուն է՝ ըստ օսմանեան վարչութեան, և մարթ է կարծել հին, այլ անծանօթ 'ի գրոց, կամ լաւ ևս ասել՝ յինէն։ Նոյն կարծեմ և զԱսարլըգ, զոր՝ Եիւրքէր հայր Ռամազանի վիճակեցոյց տոհմի Գուզուճ Թուրքաց՝ 'ի ձմերոց [3]։ Ի հիւսիսոյ սորին է Զայ-քեօյ (Գետագիւղ) իբր 100 տամբք Հայոց, ըստ ոմանց 'ի մերոց ծանօթարարաց, ըստ որոց՝ 'ի չորեսին նախայիշեալ գեօղս, յէրզէն (225), Օճագլը, Զօք-Մէրզէմէն, Եիւզէրլիք, և յերկոսին ևս՝ 'ի Պաղչէ և Էյպէզ, միահամուռ 1200 տունք են Հայոց։

Նշանագոյն 'ի յիշատակեալ տեղիս գաւառին Ճկերոյ՝ 'ի պայմանթղթի անդ Լևոնի, է գրեալն 'ի նմին լատիներէն Նիկրինում, Nigrinum ('ի հայցական հոլով), որ է ըստ մեզ Նղիր յուղղականն, և յաճախ 'ի հոլովականն գրեալ Նղրոյ բերդ. մի 'ի գլխաւորաց, այլ ոչ յիշատակեալ 'ի կարգի բերդորէից 'ի թագադրութեան Լևոնի Մեծի. թերևս զի սեփական էր արքունեաց. քանզի Վիլեպրանտ՝ որ յերկոտասան ամի թագաւորութեան նորին էանց ընդ սահմանքս, բերդ արքայի կոչէ, Castrum Regis Nigrum. 'ի պայմանագրին Լևոնի ոչ իբրև բերդ յիշի, այլ դէթ իբրև գեօղ կամ աւան. և զի անյայտ է սկիզբն շինութեանն և անուանն՝ ոչ կարեմ գուշակել Հայոց 'ի լատինէն յեղեալ զայն յիւրեանց ձայն, թէ Լատինաց՝ ըստ սովորութեան իւրեանց զնմանաձայնս ինչ յիւրեանց նշանական բառ. զի Nigrinum կամ Negrinum, որպէս գրի 'ի նոցանէ, սեաւ կամ սևային նշանակէ, և ըստ այսմ 'ի ճահ գայ և կոչման լերանցն. ըստ սոցանէ թուի և Արաբացւոց կոչեալ Նուղէիր [4]. առ որս գտանեմք նախ յիշեալ յամի 1274, յորժամ ասպատակ Պիպարս սուլտանին 'ի Սսոյ և Մսսայ էանց ընդ Թիլ Համտնոյ և ապա ընդ սա, զոր և պատմիչ նոցին կոչէ Բերդ Նղրոյ, (Քալադ Նուղէիր)։ — Առաջին տէր Նղրոյ ճանաչի Կոստանդին († յետ 1308 ամի), որդի կարծեցեալ մեծի թագաւորահօրն Կոստանդեայ. քանզի որդի նորա Պաղտին՝ ասի թոռն գոլ թագաւորահօրն, «'ի բարձրագոյն տոհմէ, զի է 'ի թագաւորական ազգէ, մերձաւոր բա-

1 *Clemens Episcopus*, etc. Dilectis filiis, Fratri *Martino* Priori, et Conventui *Domus Armenorum de Montanea Nigra*, Ordinis Sancti Basilij, Salutem. Religionis vestre meretur honestas, ut vos speciali diligentes in Domino caritate, illa vos prosequamur gratia, etc.

Datum Avinione, IIII Nonas Aprilis. Anno quarto Pont. Nostri.

2 Ֆաւա և Մանարոյ Անճակլը գրեն, Anjakle, և կարծեն վասն գեղեցկութեան վայրուցն Կիւզէլլի կոչեցեալ զմիւս գեօղն։

3 Համմէր, Պատմ. Օսման. Ի։

4 Անծանօթ գոլով բնագրին՝ այսպէս համարիմ ընթեռնուլ, զոր գերմանացին Վայլ, (Դ, 78), Նուաքէիր գրէ, Kalat-Nukeir.

» բեպաշտին մերոյ քրիստոսասէր արքային Հայոց Աւշնի. » որդի գոլով փառաւոր իշխանին տիրոջն Նղրին, և » Թոռն իմաստնոյն և հանճարեղին Կոստանդեայ՝ աւագ » Պարոնին. զի այս Կոստանդին տէր Նղրին՝ երիս որդիս » ունելով, որ են այժմ (յամի 1319) 'ի յիշխանութեան » պատիւ, փառաւորագոյնք և հաւատարիմք. և 'ի յերից » որդւոցն մին է սա, Պաղտինն, որ է այժմ մարաջախտ » Հայոց՝ ըստ պատուոյ »։ Իսկ մայրն՝ Թոռն դուստր Թագաւորին Կիպրոսի (Հիւկ). քանզի Եդուարդ Բ Թագաւոր Անգղիոյ 'ի Թղթին առ Լեւոն Գ՝ զՊաղտին կոչէ consobrinus նորին, որ է համշիրակ, կամ մօրաքեռորդի, և մայր Լեւոնի էր Մարգարիտ՝ դուստր Հիւկի։ Երկրորդ որդի Կոստանդնի՝ էր Վասակ, զորոյ ոչ գիտեմ զպատիւ և զիշխանութիւն, բայց Նշանակի մահ Նորա՝ ձեռնագրեալ յեղբօրէն՝ 'ի Պաղտինէ, այսպէս. « Թվին » Հայոց ՉԷ (1328) յամսեանն հոկտեմբերի ԻԹ օր » շաբաթն, յարևանկն, փոխեցաւ առ Աստուած եղ- » բայր իմ Վասակ »։ Երէց որդին էր Հեթում, ժառանգ և տէր Նղրոյ և Ջամբռլայ (Հանդերձապետ) Հայոց. որ և 'ի մահուան Օշնի Թագաւորի՝ ընդ երկոցուն հարազատացն Կոռիկոսեցեաց՝ Օշնի աւագ Պայլի և Կոստանդնի Գունդստապլի՝ խնամակալ կարգեցաւ տղայ արքային Լեւոնի Դ. և ըստ ասելոյ Մաշկեւորցւոյն (Բարսղի, յամի 1325), « խառնեալ և միացեալ է ընդ Նոսա՝ որպէս » միտք ընդ հոգի և ընդ մարմին, ուղղելով զբոլոր տունն » արքունի 'ի բարին, որպէս բարի միտքն զհոգին և զմարմին [1] »։ Վաւերական մի պաշտաման Հեթմոյ և ձեռնագիր՝ պահի 'ի դիւանս Մոնբէլիէի, այն է հրամանագիր յանուն տղայ Թագաւորին Լեւոնի, 'ի 16 մարտի 1331 ամին, յորում ստորագրէ ընդ այլում համանունն, « Մենք Հեթում Ջամպլայն ու Հեթում Սինիջալս հաս- » կըցուցաք զայսոր բանն Թագվորին. Հեթում: Հեթում »։ Զայս պաշտօն ցուցանէ և պատճէն ստորագրութեան սորին և 'ի լատինն, Aytonus de Negrino, Camberlanus et Gubernator regni Armenie. — Յառաջ քան զայս՝ առ Օշնիւ Թագաւորաւ կարգեալ էր Հեթում Ատենապետ կամ գլխաւոր դարպասի Թագաւորին, զի ստորագրէ, Aytonus dominus Nigrini, *Capitanus* Curie regis Hermenie. — Մինչ յայսմ պաշտաման էր՝ յամին 1312, յ' 13 մայիսի՝ գրէր առ Նա Կրատենիկոս դուքս Վենետկոյ, Թուղթ ընծայութեան Գրիգորի Դելփինոյ Պայլի, որպէս գրեալ էր և առ Թագաւորն Օշին և առ այլ աւագանին, 'ի լատին բարբառ. զոր արժան համարիմ և Թարգմանութեամբ կարգել, զի ոչ է ցարդ հրատարակեալ այլուր.

« ՊԵՏՐՈՍ ԿՐԱՏՈՆԻԿՈՍ, և այլն. Պարոն Հեթմոյ Տեառն » Նղրոյ՝ գլխաւորի Դարպասի Տեառն Թագաւորին Հայոց. Քանզի ծանեաք 'ի ձեռն ազնուականի առն Նիկողայոսի Մաւրոզենոյ (Մորոզին) քաղաքացւոյ և հաւատարմի մերոյ սիրելւոյ, և յայլոցն ևս ստուգաբան տեղեկութենէ, զի հանապազ բարերար յօժարութեամբ » ձեռնտու լինիք 'ի մեր և 'ի մերայոցս արանց գործառնութիւնս, բազում շնորհակալութիւն վասն այսորիկ » մատուցանեմք ձեզ, և երախտապարտս բարեհաճութեան ձերում զմեզ վկայեմք։ Եւ զի արդ զայրն ազնուատոհմ զԳրիգոր Դելփին՝ առաքեմք 'ի կողմանքդ » Հայոց՝ Պայլ մերոցս Վենետաց, մտերմաբար աղաչեմք » զմեծութիւնդ և զբարեկամութիւն, զի որչափ մարթ » է՝ հաճոյ Թուիցի ձեզ առ սէր մեր՝ զտէր զՊայլդ և զայլ » հաւատարիմս մեր՝ համարել յանձնեալս առ 'ի մէնջ » ձերումդ օժանդակիչ բարեհաճութեան։

» Տուեալ յ' 13 մայիսի, Ը ընդիկտիոնի [2] »։

Ոչ է յայտ ժամանակ մահուան Հեթմոյ. այլ Թուի յետ մահուան Վասակայ և յառաջ քան զեղբօրն կրսերոյ, որ է Պաղտին։ Սա մեծափառ ևս հանդիսանայ, և բազում դրուատեօք գովի՝ անդստին յաւուրց Հեթմոյ Բ և Լեւոնի Գ 'ի գործ արքունի մտեալ. յամի 1307 ընդ Թորոսի եբաժշտի Դրազարկու և Լեւոնի ումեմն սպայի՝ դեսպան առաքեալ յԱնգղիա առ Եդուարդ Ա, որ մեռաւ յառաջ քան զգալուստ դեսպանացս, որպէս և յառաջ քան ըզդարձ սոցին՝ սպանան Թագաւորն և Թագաւորահայրն Հայոց. այլ կենդանի կարծելով՝ գրէր Նորընծայ Թագաւորն Եդուարդ Բ, եթէ ընկալաւ զդեսպանս Նոցա զՊաղտին՝ զորդի տեառն Նղրոյ, և այլն. բայց զի դեռ այն ինչ Թագաւորեալ էր և զբաղեալ 'ի կարևոր և դըժուարին գործս, ոչ կարէր առ ժամայն կատարել զխընդիր Նոցա. սակայն գրեաց հրաման (14 մարտ, 1308) առ պահապանս բերդին Տուվրի՝ տալ ազատ անցս դեսպանացն և ամենայն արբանեկաց Նոցին և կարասեաց և յիսուն մարկ ստեռլինաց [3]։ Իսկ 'ի Թագաւորութեան Լեւոնի Դ, յառաջադէմ 'ի պարոնայս Նորին երևի Պաղտին՝ յետ սպանման Օշնի և Կոստանդնի, մինչև 'ի սպառ (1336) կալեալ զմարաջախտութեանն պատիւ. « Այլ » զամենայն փառս իշխանութեան և զփարթամութիւն » մեծութեան աշխարհիս՝ սուտ և ընդունայն վարկանէր... իսկ յօժարութիւն հոգւոյ Նորա հանապազ յաստուածայինսն դիմէր, և զմշտնջենաւոր և զՄնացական » բարին սիրէր... զայն գործէր՝ զոր իւր յիշատակ բարի » Մնայր յետ կենաց ելից 'ի յաշխարհէ։ Եւ տե՛ս զզանազան գործս սորա. զի 'ի մեծ և 'ի Նշանաւոր քաղաքն

[1] Եւ յարէ մաղթանս. « Զորս տացէ Քրիստոս Աստուած, զԹագաւորն և զօրքս՝ տոհմօք և զարմիւք իւրեանց՝ այսմ աշխարհի և » եկեղեցւոյ իւրոյ սրբոյ, միշտ և հանապազ. և ընդերկարեսցէ զտէ- » րութիւն սոցա, անցանելով 'ի հօրէ յորդի մինչև 'ի գալուստն իւր » միւսանգամ »։

[2] PETRUS GRADONICO, etc. Barono AYTHONO Domino de Nigrino Capitanis Curie Domini Regis Armenie.

Cum per virum nobilem *Nicolaum Mauroceno* civem et fidelem nostrum dilectum, quam per alios veridica relatione dedicimus, quod Vos in nostris nostrorumque virorum agendis, semper Vos benignos et favorabilis prebuistis, de quo Vobis gracias referrimus copiosas et inde nos vestris beneplacitis obligandos sentimus. Verum cum presentialiter virum nobilem *Gregorium Delfino* ad partes Armenie in nostrorum Venetorum Bajulum transmittamus, Magnitudinem et amicitiam vestram affectuose precamur, quatenus Vobis placeat nostri amoris intuitu, Dominum Bajulum et alios nostros fideles habere favorabiliter commendatos, ut vestris beneplacitis teneamur.

Dat. XIII Mad. VIII Indic.

[3] Mandamus vobis quod *Leonem* et *Baldenynum* nuncios Regis Armeniæ, nuper in Anglia ad nos missos, ad partes Transmarinis, cum familia, equis, harnesis, ciphe suis argentiis, ac quinquaginta marcis sterlinorum in porto Dovor transire libere permittatis. — RYMER.

» Տարսոն՝ յորում էր կայանք բնակութեան իւրոյ, եւ չի֊ » նել 'ի սմա տուն և տաճար յանուն սուրբ և երանելի » Առաքելոցն », և այլն. որպէս է մեր նշանակեալ 'ի տեղագրութեան մեծի քաղաքին, ուր Թուի ժառանգեալ զգահ Օշնի Պայլի. իսկ 'ի բերդորէից՝ ունէր ինքեան սեփհական և զանուանին Բարձրբերդ։ Ցուցեալ յիշատակագիրն և զհանդերձանս եկեղեցւոյն, և զատ յայլոց զաստուածային գրեանն, զոր եդ անդ և այլուր. ընդ որս գտեալ և զՏարէգիրս՝ զոր հաւ կնոջ իւրոյ՝ մեծ գունդստապլն Սմբատ՝ տուեալ էր գրել, եւ նորոգել և ուղղել ըստ այնր ժամանակի կարգաւորութեան, 'ի ձեռն Կոստանդեայ՝ հօր Խօրնի վանաց։ Ի կուսն գրոցս՝ իւրով ձեռամբ նշանակեալ է Պաղտին զծնունդս զաւակացն՝ որ 'ի Մարինէ կնոջէ իւրմէ, դստերէ Լեւոնի գունդստապլի՝ որդւոյն Սմբատայ[1], 'ի 1312 ամէն ցամն 1333։ Յետ երկուց ամաց (1335) 'ի յանկարծօրէն արշաւանս Ալթունպուղայ ամիրայի Հալպայ 'ի Կիլիկիա, և յաւարի հարկանելն զկողմանս Ատանայ և Մլունի, արքայն Լեւոն առաքեաց ընդ Վասլի Թղթագրի իւրոյ ըզմարաջախտս Պաղտին՝ դեսպան առ սուլտանն՝ յԵգիպտոս, գանգատել վասն դրժանաց պայմանի հաշտութեանն. և զի ընդ Հալէպ անցանէին սոքա, կալաւ զնոսա կասկածոտ ամիրայն և արկ 'ի բանտ՝ 'ի բերդի քաղաքին. « և ինքն մօտ հեծելով յերկիրս, ու էառ զՆըղիրն », իբրև գրնական տուն տոհմին Պաղտինի, 'ի վրէժ քինու. « Եւ յետ տանջանացն 'ի զընդանն՝ յետ » եօթն ամսոյն հասեալ վախճան մարաջախտուն. որոյ » ողորմեսցի տէր Յիսուս, և տացէ իւր պսակ մարտիրոսական. և բերեալ մարմինն 'ի Հայք »։ Նշանակի և յարքունական Յայսմաւուրս մահ նորա յ'12 դեկտեմբերի ամսեան (1336), և փոխադրեալ մարմնոյն Թաղումն յԱկներ վանս։ — Յետ ամաց (1344)՝ 'ի սպանման Կիտ Թագաւորին Լիւզինեան (Թոռին Լեւոնի Բ 'ի մօրէ), անդրանիկն Պաղտինի և Նղրցի տոհմին՝ Կոստանդին՝ կարգեցաւ Թագաւոր Հայոց, առաջին օտար յարքայական տոհմէ Հեթմեանց, վասն որոյ և նորագիւտ հեղինակն Տարտէլ փաանկ՝ բռնաւոր անուանէ զնա. այլ ոչ պատմէ զեղանակ Թագաւորելոյն՝ բռնութեամբ Թէ ընտրութեամբ, բայց միայն զի հալածէր զեղբօրորդիս Կիտի և զմայր նոցին։ Ի մերայոցս գովութեամբ յիշի, և ըստ կարի խաղաղութեամբ Թագաւորեալ ամս իննևտասն, († 1363). յառաջ քան զնա Թուի մեռեալ եղբօր նորա Սմբատայ, որպէս և ծիրանածին մանկանցն որք 'ի Մարեմայ՝ դստերէ Օշնի Պայլի, չև տարևոր եղեալք. իսկ 'ի քերցն՝ յիշի մին, Ռեմի, Remy, կոչեցեալ 'ի Տարտելէ, զոր կարծեմ Ֆիմիկն (ծնեալ 'ի 1326), տուեալ 'ի կնութիւն Պեմունդի՝ որդւոյ Ճիւանի՝ եղբօր Կիտ Թագաւորի. և յետ մահուան առնն՝ 'ի Թագաւորել Լեւոնի Ե, տուեալ 'ի սմանէ 'ի կնութիւն մոեռմի իւրոյ Սոհիերի՝ որ և գերեկից իւր եղև յԵգիպտոս։ — Իսկ անդրանիկ եղբօրն Պաղտինի մարաջախտի՝ Հեթմոյ ջամբռլայի՝ տեառն Նղրոյ, յիշին որդիք երկու, Կոստանդին և Ճօֆրէ. սա յերիտասարդական տիս վախճանեալ է յամի 1358, որպէս մեծաւ գորովանօք գրէ եղբայրն իւր Կոստանդին.

« Աստուածածին սուրբ կոյս բարի,
Ամեն աշխարհս քենով պարծի.
Իմ աղբայր 'ի քեզ անձնի,
Որ էր որդի Տեառն Հեթմի
Հայոց մեծաց Ջամբլայի.
Պարոն Ճոֆրէ անուն կոչի.
Եւ էր դիմօք նա գգուելի.
Ազգատաց այնէր բարի,
Եւ օտարացն էր սիրելի.
Կեցաւ ինքն 'ի յաշխարհ ԼԴ տարի,
Փոխեցաւ 'ի յաշխարհէս ԽԱ մայիսի.
Ի Թուին Հայոց ըձէ ամի։
Եւ Կոստանդինս զայս գրեցի
Որ եմ աղբայր հետ իր զկնի.
Որ եփ իմ աղբայրն 'ի միտս ինկնի՝
Արցունքն 'ի (վայր?) կու վաԹի...
Քրիստոս Աստուած իր ողորմի »։

Յետ մահուան հօրեղբօրորդւոյ իւրոյ Կոստանդնի (Բ), ինքեան վիճակեցաւ Թագաւորութիւն Հայոց, վասն որոյ և զսա բռնաւոր՝ այլ փոքր՝ կոչէ Տարտէլ, և յոյժ նուազեալ առ նովաւ զԹագաւորութիւնն, զմեծ մասն երկրին տուեալ Եգիպտացւոց և օտարաց. և ոչ գիտեմ վասն մյար՝ եԹէ այլոյ ինչ պատճառի՝ սպանաւ յիւրայոցն յամսեան ապրիլի 1373 ամին. և յետ հնգետասան ամաց յաջորդեաց վերջին Թագաւոր՝ Լիւզինեանն Լեւոն Ե։

Իսկ բերդն Նղիր՝ որ էած զմեզ 'ի բանքս, 'ի մահուան Պաղտինի օտարացաւ 'ի Հայոց. ոչ միայն զի էառ զայն Ալթունպուղայն, այլ զի և դառն դաշամբ ստիպեցաւ Լեւոն Դ Թողուլ յԵգիպտացիս՝ համօրէն ձախակողմամբ Ջահանայ, յորում և Նղիր և ամենայն ճկեր, և Այաս գլխովին։ — Այսքան յիշատակք Նղրի չեն բաւական 'ի յայտնել զդիրս նորին՝ 'ի գաւառիս ճկերոյ, կամ 'ի սահմանս նորին, այլ եԹէ 'ի դէպ իցէ ասել ինչ ընդ կարծ, համարեցայց զմի յերկուց աւերակ բերդորէիցն, Ջարտազ գալէ և Ֆաէնի գալէ կոչեցելոց, մերձաւորաց Օսմանիէ աւանի յելից կուսէ, յաղբերավայրս Աղա-չայ գետոյ օժանդակի Ջահանայ։

134. Ի Նախնեաց անտի ծանօԹագոյն վայր 'ի գաւառիս ճկերոյ, որպէս և յայժմուս՝ է Պայաս, առ փոքու վտակաւ, որ կրէ զանունն՝ նաև առ այլազգիս, Փայաս կոչմամբ. 'ի Յունաց և 'ի Հռովմայեցւոց կոչէր Պայէ, Baïae, Baiae. համանուն և համանման իւիք չքնաղ շինին իտալականն Կամպանիոյ, 'ի գեղեցիկ ծառաւէտ վայրի, և հանգոյն նմին ունելով 'ի հնումն բաղանիս, յոր սակս

1 Եւ են սոքա. Ա. Անդրանիկն ԱԼԻՍ, ծնեալ յ'7 փետր. 1312։
Բ. ԿՈՍՏԱՆԴԻՆ Բ, Թագաւոր, ծն. յ'17 ապրիլ, 1313 † 1363։
Գ. ՖԻՄԻԿ, ծն. յ'17 մայիսի, 1326։
Դ. ՍՄԲԱՏ, ծն. 'ի 25 դեկտ. 1333. « որ էր, ասէ, Քրիստոսի » Ծննդեան տօն, և պատկեր աւուրն շաբաԹ »։ Ըստ օրինակի հօր իւրոյ Պաղտինի և անդրանիկն Կոստանդին (յետոյ Թագաւոր), նշանակէ զծնունդ անդրանկան իւրոյ ԱԻՇՆԻ, 'ի 15 օգոստոսի, յամին 1338, 'ի Բարձրբերդ գղեկի՝ որ ցուցաւ սեփական կալուած տոհմին։

վարիչ կողմանս։ Ի Նաւահանգիստս յայս ասի Նաւեալ և ելեալ Հերակլի կայսեր՝ յերթալն ընդդէմ Պարսից։

Յիշեցաք 'ի վեր անդր (յէջ 404) զոր ինչ արար 'ի Պայաս Քիւչիւկ Ալի բռնաւոր լերանց։ Յանցելում դարու գրէր պատրիարքն Նալեան՝ զտեղւոյս. «Փայաս է Ատանայու ծովեզերեայ քաղաք մի, դէպ 'ի հարաւ. չէն, » հաստատ և բերդաւոր. ունի և մզկիթս և պանդոկս » վաճառականաց... Թէպէտ ցած հաւայ ունի՝ բայց վաճառատեղի է. խիմոնն և Թուրինճն առատ է. և ապա» հով լեառն մի նորա կից է»։ Ճանապարհորդ ոմն իտալացի 'ի սկիզբն ԺԷ դարու յիշէ գովութեամբ զվաճառս բամբակի և ասու 'ի Պայաս[1]։ — Ընդ մէջ երկոցուն՝ ցամաքային (Գուրուշ-Պայաս) և ծովային Պայասաց

188. Մաշտոց գրեալ 'ի Պայաս, յամի 1216.

կայ գեօղ մի Քուրէդուր? գրեալ 'ի տախտակս, (Գուրդադաս՝ 'ի Պարքըրէ), և յերի նմին այլ գեօղ բնակեալ յԱսորւոց։ — Ի Պայաս և 'ի մերձաւոր գեօղս երեսին, ըստ ոմանց 'ի մերայոց՝ են 500, և ըստ այլոց մինչև 800 տունք Հայոց։ — Գեօղ մի ևս յիշի մերձ 'ի Պայաս 'ի դժուարամատոյց լեռնավայրի, Քարմասնիմի?, Charmasnimi գըրեալ, զոր աւերեցին զօրք Իպրահիմ փաշայի յամի 1839։ Հին Նաւահանգիստ Պայասու արդ կիսով խցեալ է յաւազոյ, և երևին 'ի նմին աւերակք ինչ, որպէս և 'ի ցամաքին կողմանէ 'ի ստորոտս լերանց։ Իսկ ընդ ցամաք ճանապարհ բացեալ է ընդ մէջ կրկին Պայասից, և ուղղակի ձգեալ ընդ արևելս՝ կտրէ և անցանէ ընդ Աղ-գայա անուանեալ մասն Սեաւ լերանց, և իջուցանէ 'ի հովիտն որ ընդ մէջ Նորա և Քուրդ լերանց, 'ի Շէյխլէր կոչեցեալ վիճակ։

Ի հարաւոյ Պայասայ և 'ի հիւսիսոյ Աղեքսանդրեկի՝

189. Ջագագիր 'ի նախայիշեալ Մաշտոցի.

ծանօթ տեղի է գետակն որ կարծի Կարսոս կամ Կերսոս, Κέρσος, կոչեցեալ 'ի հնումն, և այժմ Մէրքէզ, مركز, որ Թարգմանի Կենդրոն, կամ Մարգած, յորոյ երկուստեք կան համանուն գեօղ և բերդ 'ի բարձու, Մէրքէզ-գալէսի, և Թուեցան ոմանց աւերակք սառակինեան ոճով, այլոց՝ ըստ ոճոյ բերդորէից Խաչակրաց, որպէս կոչեն Եւ-

1 Vi si fa un bel mercato ad un loco chiamato il *Bajasso*, e si vende assai cottone filato et lane buonissime per far matarazzi. — Pesenti.

բոպացիք և գրերգս մերայոց՝ յաշխարհիս յայմիկ. այլ ոչ ըք մանր սորրագրէ կամ ընծայէ մեզ զպատկեր բերդին. և է որ համարի թէ ոչ ևս լսի Մերքեզ անուն 'ի տեղւոջդ, այլ նոյն համարի ընդ Սարը-սաքի գեղջ, զոր այլք ուրոյն և 'ի հարաւոյ Մերքեզի նշանակեն, 'ի սոյն անուն կոչէ և զգետակն: — Ի թիկանց գեօղիցս ամբառնայ քարաժայռ վախուտ՝ համարեալ 'ի միոյ 'ի քննողաց կողմանցս՝ անուանեալն 'ի Պլինիոսէ Կոկորդիլոս լեառն, Mons Crocodilus, և զայս ասեն նշանակէ և Կերսոս՝ յեթովպացի և յասորի լեզու. հեղինակն այն համեմայեցի՝ Անդրիկոս կոչէ (Andricus) զգետակն: — Ոչ գիտեմ սա՞ թէ այլ լեառն է 'ի սոյն սահմանս՝ յայժմուս Շուլ կոչեցեալ (Shool):

Սակաւուք 'ի հարաւոյ Սարը-սաքի գեղջ, և վեց կամ եօթն մղոնաւ 'ի Պայասայ՝ և հնգիւ չափ 'ի հիւսիսոյ Աղեքսանդրեկի, կայ մի 'ի հռչակագոյն կապանից կամ լեռնանցից կողմանցս, Դրունքն Կիլիկիոյ եւ Ասորւոց, Πύλαι τῆς Κιλικίας και τῆς Συρίας, Pylæ Ciliciæ, իմա՛ մըտից 'ի կողմանէ Ասորւոց, վասն որոյ և կոչէր իսկ Pylæ Syriæ Ciliciæ. 'ի միջին դարս անուանիւր սա յԵւրոպէա-



190. Սագալ-թուրան. Դրունք Կիլիկիոյ-Ասորւոց.

ցւոց՝ Յովնանու մոյթք կամ սիւնք, Piliers de Jonas, և յԱրաբացւոց ոմանց Դուռն Աղեքսանդրեկի. քանզի աւանդէին անդանօր ելեալ Յովնանու 'ի փորոյ կիտին 'ի ցամաք. և զի աւերակք ինչ են 'ի տեղւոջն և կանգուն մնայ սրակամար դուռն մի բարձրագոյն բարաւորօք, զոր այլազգիք Սագալ-թուրան, صقال طوتان կոչեն. իբրու թէ որ ընդ այս նեղուց դրանս անցանէ՝ տագնապեալ ձեռն 'ի մօրուս արկանիցէ. և են արդարև անձուկ յոյժ անցքն, միջոց ծովուն և լեռնոտին, հանգոյն իմն գերահռչակ դրանց Պահակին Ճորայ, 'ի ծագս Աղուանից աշխարհի, զոր երբեմն Հայք ունէին, և ցայն վայր համարէր սահման իշխանութեան նոցին ընդ արևելս հիւսիսոյ. յորմէ մարթ է ձգել ցայսր գիծ իմն չափով միոյ, և խորհրդածել զբաղդ ազգի (Հայոց), որ 'ի միջոցի այսքան տարակաց դրանց երկրի՝ պարզէր երբեմն բազուկս փառունակս: Ոմանք զայս շինուած համարին զանուանեալ բագինս Աղեքսանդրի, զոր վերագոյն ուրեք յիշեցաք (յէջ 400). զի ոչ եթէ սա իսկ է յատուկ Դուռն Կիլիկիոյ, այլ այսու անուամբ իմանի բովանդակ անձկագոյն միջոց ծովեզերեայ ճանապարհին, որ և յատկապէս Անցք դրանն կոչէր ըստ Սանուտոյ, Passus Portellæ: Իբրև կէս բնամղոն մի ճանապարհի, երկու փարոսաւ 'ի հիւսիսոյ Աղեքսանդրեկի, 'ի հարաւոյ Կերսոսի, սաւարկեալ է գետինն, և երկուստեք նշմարին հետք որմոց պահակի, թերևս շինեալքն 'ի Հեթմոյ արքայէ, զոր յիշէն Արաբացի պատմիչք, և առ նոքօք ասեն բանակեալ առ վայր մի Պիպարսայ՝ յարշաւանին մեծի՝ յամի 1274, և ապա յառաջ անցեալ անտի մինչև 'ի Մանգայ, անյայտ ինձ տեղի: Ի սպառուած որմոցս 'ի ծովեզերին են աշտարակք, մի աստի և մի անտի: Ընդ այս դուռն անցին Կրսերն Կիւրոս և Աղեքսանդր, ըստ կանխաւ յիշելոցս. բայց և յետ հազար ամի, ասեն, Յուստինիանու կայսեր ընդարձակեալ կամ յարդարեալ զանցս Դրանս, կռանահար մանրելով զքարինս: — Այլ մեզ կարևորագոյն է յիշատակաւ Լեւոնեանց և Հեթմեանց մերոց, որոց 'ի բուռն առեալ էր զպահակս զայս և բազում զգուշութեամբ պահեալ, և բազմաչահ բաժտուն մի հաստատեալ և աստ, որ և զոյգ ընդ Այասուն՝ մարթի կոչել կրկնածորակ աղբիւր փարթամութեան Սիսուանայ. և կոչէր սա յարևմտեայց՝ Portella, որ նշանակէ Դռնակ, իսկ 'ի մերայոցս սոսկապէս Դուռն. որպէս նշանակէ արքունի պատմիչն 'ի յառաջ յիշատակեալ դէպս պատերազմին Պիպարսայ և արքայորդւոց Հեթմոյ, եթէ՝ « Երկրորդ մասն (զօրաց սորա) էին 'ի տեղին այն՝ որ կոչէր » Դուռն ». Ուրանօր 110 ամաւ յառաջ (1156) նախահարք նոցա օգնութեամբ Աստուծոյ՝ գործ մեծ յաղթութեան կատարեցին 'ի վերայ Իկոնիացւոց. զի յորժամ սուլտան նոցա գրգռեալ 'ի Մանուէլէ կայսերէ՝ եկն 'ի վերայ Թորոսի Բ, և ոչ կարաց ընկճել զսա, զփեսայ իւր Եաղուպ-Արսլան՝ « այր ժանտ և չարասէր՝ բազմութեամբ զօրօք իբրև երեք հազար՝ ասպատակաւ յերկիրն Անտիոքու առաքէր: Իբրև անցին ընդ տեղին այն զոր Դուռն կոչէին, յանկարծակի իբրև յերկնուստ առաքեալ 'ի քրիստոսասէր զօրաց Փրերաց, և եղբայրն ասպարապետին (Թորոսի) Ստեփանէ, յանկարծակի 'ի վերայ անկեալ առ հասարակ զամենեսեան սատակեցին, և զգլխաւորն իւրեանց Աղուպն՝ նիզակաւ ընդ լերդն անցուցեալ, և դառնակոռոչ ձայնիւ եհան զգաւանցեալ ոգին: Եւ լուեալ զայս բանակն՝ զարհուրեցան յոյժ ». և զի անկաւ ևս ախտ 'ի վերայ երիվարաց նոցա՝ 'ի փախուստ դարձան. (տես յէջ 53)[1]: Վիլեպրանտ՝ որ նախ յօտարաց (ըստ իմ գիտութեան) յիշէ զտեղիս զայս՝ Portella անուամբ, ասէ գեօղ աղնիւ լինել, և առ երի՝ Դուռն 'ի վերայ ճանապարհին՝ 'ի ծովեզերն, գեղեցկաշէն սպիտակափայլ կճէիւք. յորոյ վերայ՝ աւանդեն, աւէ, պատուիրեալ Աղեքսանդրի թաղել զոսկերս իւր, որպէս զի ամենայն թագաւորք և իշխանք որ առ կենդանեաւն ընդ իշխանութեամբ իւրով կային, յետ մահուանն

[1] Այս բան է Մատթէոսի Ուռհայեցւոյ, յամն ՈԵ: Յիշէ և Ապուլֆարաճ Ասորի պատմիչ զայս գիպուած. և ոչ կարացին, ասէ, այլազգիքն մտանել 'ի կիրճս լերանցն, քանզի կալեալ և զգուշացեալ էր անդանօր Հայոց:

անցցեն 'ի ներքոյ նորա [1]։ Լեւոն՝ որ յառաջնում արտօնագրին առ Վենետիկեցիս՝ յամի 1201, ազատ առնէր զնոսա 'ի բաժից՝ յայլ կողմանս երկրին, պարտաւորէր անդէն բնակողացն տուրս՝ հատուցանել զառվրականն սակ՝ ըստ այլոց քրիստոնէից անցորդաց և դարձողաց [2]․ յայտ ուրեմն է զի և յառաջ քան զմիհրդրոն ԺԳ դարու՝ սահմանեալ էին օրէնքս և բաժատուն Հայոց․ 'ի նոյն անշուշտ պարտաւորեալ էին և Գենուացիք, թէ և ոչ յիշի յ՝ առ նոսա տուեալ հրովարտակին Լեւոնի։ Զայս օրէնս հաստատեն կամ կրկնեն Հեթում Ա (1245) և Լեւոն Բ (1271) յիւրեանց հրովարտակըս․ 'ի միւսում հրովարտակի Լեւոնի Բ առ Գենուացիս՝ յամի 1288, ոչ յիշի Դուռնն, քանզի քան զնա յառաջ (1268) առեալ էր զայն Պիպարսայ՝ յետ նուաճմանն Անտիոքայ․ բայց թոռն նորա Լեւոն Գ դարձեալ յիշէ զԴուռնն՝ նովին բանիւք (փռանկերէն) արտօնագրի 1291 ամին [3]․ զի հօրեղբայր նորա Հեթում Բ թափեալ էր զայն վերստին․ նոյնպէս և Լեւոն Դ յիւր գաշնագիրս առ Վենետիկեցիս՝ յամի 1321․ յայսմ հետէ ոչ ևս յիշի։ — Ի վերայ համապարհի կապանին յիշէ Լոտիկ՝ գեղեցիկ գեօղ մի Իդիկ, [illegible], անուն, այլ անծանօթ։

135․ Ի հարաւոյ Դրանս զծովեզերբն նշանակին գեօղք Աղամբ, Քէրքիս, Ապատիքիէ ?, Գուրա-քէօյ կամ Գուրտուլու-քէօյ և Գարա-պուլաւոճ․ և ապա քաղաքին Աղեքսանդրեակ, (ընդ 36° 35' 31" լայն․ և ընդ 33° 55' 45" աստիճանաւ միջօրէին Բարիզու), զոր հին ճանապարհագրութիւնն հռովմէական՝ միջնաւան մղոն հեռի առնէ երկուսեան յԻսսոսէ և 'ի Պաղրասայ։ Սա մի 'ի քաղաքաց հռչակի կառուցելոց 'ի Մեծէն Աղեքսանդրէ, 'ի յիշատակ յաղթութեանն 'ի վերայ Դարեհի, և առ որոշումն յայլոց համանուանց յաւելուա-



191․ Աղեքսանդրեակ եւ սահմանք․

1 Venimus ad Portellam : hoc est casale bonum, prope se habens *Portam*, a que ipsum denominatur: hæc sola sita est in strata publica, in ripa maris, et est ornatissima, albo et valde politi marmore composita : in cujus summitate, ut dicitur, ossa Alexandri prænominati requiescunt; etc. – VILLEBRAND.

2 Venetici habitantes in Cismarinis partibus, et transierint per Portellam, tenentur ibi persolvere dricturam, sicut solitum est ab omnibus christianis transeuntibus et retrumeuntibus persolvere. — *Cartulaire*, 140.

3 Sauf les Venetiens che demorans sont deça mer, se il passent par la *Portele*, che il soient tenus de paier droiture, si cum est usage dou leue. — *Cartulaire*, 152.

ծով կոչիւր 'ի հնումն՝ Աղեքսանդրիա առ Իսսաւ, 'Αλεξάνδρεια ἡ κατ' Ἰσσόν, զորմէ Լատինք պիտակաբար առլորեցան կոչել Catisson, կամ Աղեքսանդրիա Կիլիկիոյ, 'Αλεξάνδρεια Κιλικίας. առ Լատինս մականուանեալ է և



192. Դրամ Աղեքսանդրեան քաղաքի.

Scabiosa, որ նշանակէ հոտ և անհարթ: Ի միջին դարս առլորութիւն եղև փոքր Աղեքսանդրիա կոչել, Alexandria Minor, Alexandrie la Petite, կամ նուազական մանկամբ Աղեքսանտրեդդա, Alexandretta, և Alexandriola, յոր սակս 'ի դէպ վարկաք կոչել և մեք Աղեքսանդրեակ, իսկ Թուրքք կոչեն Իսքէնտէրուն. اسكندرون. բառ որում և առ մերայինս գտանի գրեալ Սկանդրուն: — Իբր հինգ մղոնաւ 'ի հարաւոյ նորա Դրանն, և յոմանց կարծի անդ լինել զտեղի հնագոյն քաղաքի և շահաստան նաւահանգստին փիւնիկեցւոց՝ Միւրիանդրոս, Μηρίανδρος, կոչեցելոյ 'ի Քսենոփոնէ, Μυρίανδος բստ Եղիադորեայ, զի յանուն նորին կոչէ զԾոցն (Μυριανδικοῦ κόλπου). բայց այժմ, որպէս և նոր գրիչն Մարտինէ, համարին զսա հարաւագոյն ևս լինել. անդ ազա Աղեքսանդր յառաջ քան զհատան պատերազմն: Երկոքին ևս տեղիք (Աղեքսանդրեակ և Միւրիանդրոս) չեն ինչ նշանաւոր եղեալ, և ոչ իսկ յիշին առ պատմագրութեամբ մերովք: Յաւաղնում զօրաւոան Խաչակրաց (1097) Տանկրի տիրեաց Աղեքսանդրեկի. զոր լուեալ մերձակայ լեռնայինն Հայոց, որպէս և Թուր-



193. Ծոց Աղեքսանդրեկի.

քաց, ընդսպարեցք եղեն նմա. այլ մերձ 'ի կատարած տէրութեան մերայոց՝ յամի 1347, առ Բ Կոստանդեաւ՝ օգնութեամբ սպիտակաց Համդուի, առեն պատմիչք ոմ., թափեալ զայն Հայոց հեռի անգամ յեգիպտացւոց անտի: Արաբացի պատմիչն Մագրիզի՝ առաջին քաղաք երկրին Սիսուանայ գրէ զԱղեքսանդրեակ, խնանոլով 'ի հարաւոյ արևելից կուսէ: — Յայժմուս՝ թէ և բաւական վարուն է Աղեքսանդրեակ և փոյելուշ քարաշէն բնակութեամբք եւրոպական ինն գունդից և փոխաւորականաց, երկու եկեղեցեաք (յորոց մին պաշտի 'ի կաթոլիկական միաբանից), և անզգայր երթևեկի փոխաւորք կարուանաց, 'ի մէջի կալով երկոցուն Դրանցն Ամանոսի, մինչև Ծոցն Հայոց կոչել սրա յանուն նորին՝ Ծոց Աղեքսանդրեկի, Golfo di Alessandretta. սակայն զոյգն ինչ է նաւահանգիստն, և անբաւական ամենայն նաւուց. և զի կիմեայն ևս վատառողջ է, վասն շրջակայ

տղտաղտուկ մօրից, թէ և յամաց հետէ նուազեալ են սոքա[1], վասն որոյ բանագրօսութեամբ իմն բարգաւաճէ, մինչև յարդարեսցի այլ նաւահանգիստ դիպան, կամ ընդարձակեսցի սա, զի անքոյթ յոյժ և յարմար է տեղին։ Բնակիչք աւանին համարին արդ իբրև 4 կամ 5000։

Տիկինն Պեկճիյօղլու որ երեսուն ամօք յառաջ (1852) եկաց աւուրս երկուս յԱղեքսանդրեակ, չառնոյր յանձն կոչել զայն քաղաք, այլ չուարան, կամ տեղի մեկնելոյ. Un lieu d'où l'on part. Յամի 1870 երթևեկ նաւուց ութ ազգաց եղև 174 թուով, վաճառաբեռինք 40,000. յամի 1871, նաւք և շոգենաւք 258, վաճառաբեռինք 67,000. բայց գրեաթէ կէս թուոյ նաւուցն և վաճառուց՝ Օսմանեանց էր. յայլոց ազգաց՝ Փռանկացն յոլովագոյն էին նաւք և վաճառք։ Ի ցամաքէ իբրև 4 կամ 5 բիւրք բեռնաբարձ ուղտուց ամի ամի գան այսր։ — Ի ծայր ցամաքին՝ 20 Չ. միայն հեռի 'ի ծովէն՝ ամբառնայ աշտարակ լապտերի, 15 Չ. բարձր, և լոյս նորին սփռի մինչև ցութ մղոն ընդ ծով։ – Յետ խափանման նաւահանգստին Այասու՝ Աղեքսանդրեակ փոխանակեաց զայն 'ի յետին երիս կամ չորս դարս, մանաւանդ 'ի բարգաւաճել Հալպայ վաճառականութեամբ արևմտեայց, նաւակայան սորին համարէր. այսմ վկայ արձանանան և գերեզմանք վաճառականաց ոմանց, յորոց զԱնգղիացւոցն ընդօրինակեաց ոմն համազգի նոցին 'ի մօտ ամօք, զտեալ 'ի գերեզմանոցի եկեղեցւոյն Յունաց, որպիսի է և 'ի ստորև նշանակեալն՝ Մարտինի Լոյի ուրումն Լոնտոնեցւոյ, † յամի 1674, և ընտանեաց նորին, լատին լեզուաւ[2]։

Իբր քառորդաւ ժամու 'ի հարաւոյ այժմու քաղաքին կան մնացուածք հնոյն, և առ նոքօք բերդ մի բազմանկիւն, զոր կոչեն յանուն Կոփրետոսի առաջնորդի խաչակրաց, իբրու նորին դաստակերտ։ Սակաւուք եւս 'ի բացէ աղբիւր մի է, զոր ոմանք Աղբիւր Յակոբայ կոչեն և այլք Ջրհոր Յովսեփայ։ — Ծովեզրն ընդարձակեալ է աստանօր, կամ թէ ծովն նհանջեալ յետս, որոյ ալիք բախէին երբեմն զբերդն Կոփրետեայ, զի երևին ցարդ 'ի նմին երկաթեայ անուրք կապանաց նաւուց։ Զայս բերդ կարծեմ ուղևոր ոմն 'ի սկիզբն ԺԷ դարու (1612) Ամազոնաց աշտարակ կոչէ, 'ի ճախճախուտ վայրի, Torre delle Amazzone, զի համարէր 'ի հնումն բնակեալ յԱմազոնաց. նոյն ասէ և վասն Աղեքսանդրեկի յաճախեալ 'ի մթերաբեր վաճառականաց Գարամանիոյ և Փոքուն Ասիոյ, այլ վասն վատութեան օդոյն՝ սակաւուց զերծանիլ 'ի հիւանդութեանց[3]։ — Մղոնաւ կամ դոյզն հեռի 'ի քաղաքէն՝ յարևելից կուսէ, 'ի լերինն՝ երկու կոճատ սարք են, յորոց միջոյ 'ի ձմերանի բազում անգամ շնչէ հողմն ուժգին, և փրփրեցուցեալ զալիսն սպիտակացուցանէ յոյժ, բայց ոչ շատ ամբառնայ զջուրն. զտեղին և զհողմն՝ Ռագիէ, Raguier, անուանեն. յորոյ 'ի մերձենալ ընչելոյն՝ ծուէնք սպիտակ ամպոց ցցուեալ ծածանին. փոփոխական են և հողմունք 'ի գոգս անդ լերանցն մերձ 'ի ծով[4]։ Իսկ ծովեզերքն մինչև 'ի Ռասխանձիր՝ բլրաւէտք և ծառաւէտք են։

ՅԱղեքսանդրեկէ՝ սակաւուք հեռի յելից կուսէ և 'ի հարաւոյ՝ նշանակին գեօղք ինչ, զորոց չկարեմ երաշխաւորել ստուգութիւն անուանց, այլ ընթեռնում 'ի տեղացոյցս՝ Ամուճիկ, Գարա-աղաճ և Շեքերէ՝ որ հարաւագոյն է. իսկ 'ի ստորոտս լերանցն՝ յարևելակողմն՝ Գարաճի, Գըզըլ-չուգուր, Աշքեար-պաղչէ կամ Աչքար-պէյլի, Գայիմքի?, Սագուա, Եարբ-գայա, Ագճայա? թերևս Աղ-գայա. յորոց միջի ամբառնայ Տէլի-պէքիր լեառն՝ 1200 Չ. բարձր, և 'ի կուսն սորին ընդ արևելս 'ի պարակցութեան անդ Սեաւ լերանց՝ Ալամ տաղ և Կէօզ-պէլ լերինք։

136. Յետ այսր խոտորի ճանապարհն՝ որ 'ի Դրանէն գայ յԱղեքսանդրեակ՝ ընդ արևելս հարաւոյ, և անցանէ ընդ կիրճ Քէսրիկ և Գըզըլ-տաղ հատուածոց Ամանոսեան լերանց. անդ իբր ութ մղոնաւ յՆԼ. Հր. Աղեքսանդրեկի՝ միւս և հարաւային կապան է և յատուկ Անցք կամ Նեղուցք, որ և Դրունք Ասորւոց, αἱ Συρίαι πύλαι, Pylæ Syriæ, յայժմուս կոչեցեալ յանուն Պէյլան աւանի՝ որ 'ի ստորև կայ 'ի 686 Չ. բարձու, իսկ անցք կապանին բարձրագոյն ևս են, իբր 8 կամ 900 Չ., գագաթն լերինն իբր 1200 Չ. յերեսաց ծովու[5]. Սանուտոյ սոսկապէս Անցս Սեաւ լերանց կոչէ զայս՝ յԱղեքսանդրեկէ գալով. (Et inde transitur Montagna Nigra)։ Շուրջ այսր անդր երևին քանդեալ մնացուածք հին շինուածոց, ագուգայից և հռոմէական պողոտայի, որ ուրեք անաղարտ մնացեալ է. իսկ պողոտայն հատեալ է ընդ որձաքար ժայռս ցհարուստ միջոց. և 'ի սպառուած քարուտ ուղւոյն կան մոյթք կամ խարիսխք՝ ոճպէս կարծի՝ յատուկ դրան, որպիսի հիւսիսայինն այն հայկական Դռնակ՝ որ մուծանէր 'ի Կիլիկիա. իսկ սա հանէ յԱսորիս ընդ հարաւ, և յԵփրատայ հովիտն՝ ընդ արևելս։ Թէպէտ Մարմիէ նորագոյն համարի զայս անցս ճանապարհի, և հնագոյն զծովեզերեայն՝ որ ընդ Պայաս, Աղեքսանդրեակ, Միւրիանդոս և Արոսու, և յելից սորա անցանել ընդ լերինսն 'ի սահմանս Անտիոքայ, սակայն ցարդ յոլովագոյնք 'ի գիտնոց՝ զՊէյլանայ անցս համարէին համաշխարհական հին ճանապարհ ազգաց և աշխարհակալաց, Ասորեստանեայց, Պարսից և Հռովմայեցւոց, 'ի խաղալն նոցա յարևելից և 'ի հարաւոյ՝ արկանել զձեռն իւրեանց 'ի վերայ Փոքուն Ասիոյ. և յետ նոցա՝ Արաբացւոց և Բիւզանդացւոց և Թուրքաց. որպէս և անտուստ՝ յայսկոյս դիմելոց խա-

1 Խոստացի ոմն Մարդինելլի (Martinelli) անուն, գործակալ վաճառականաց Հալպայ՝ յաւուրս Իբրահիմ փաշայի, սկսաւ ցամաքեցուցանել զաղտաղտուկն, այլ անվարձ մնացեալ 'ի նմանէ՝ ձեռնթափ եղև։ — ՊՐԻԱՆՈՑ, 435։

2 Martinus Loe Londinensis, Anglorum per tria fere lustra accurate curans, Alexandriæ qui loco adeo insaluberrimo, tot sæcula audiant! cum officio et negotiis, si quis alius nequaquam impar Spartam quam nactus est semper ornans immaturo fato quadrigenarius licet, 24 Novembris A. D. 1677, conterraneis suis et externis, indigenis et advenis, universis equidem miseris præsertim et pauperibus, flebilis occidit, nulli flebilior quam Luciæ viduæ afflictissimæ binisque infantibus Martino et Mariæ, quæ optimo marito hoc monumentum sacravit.

3 Porto di Alessandretta, chiamato ancora di *Scalderona*... Questo è quel porto che si dice essere stato anticamente habitato dalle donne Amazzone, e vi è ancora una torre in mezzo a certe paludi chiamata la *Torre delle Amazzone*. Qui vengono portate molte robbe dalla Caramania et Natolia, lochi assai vicini... L'aria vi è pestifera, e pochi vi stanno che non s'amalino. — PESENTI.

4 Գուրդիվրոն. COURTIVRON, 65։ — Տես 'ի պատկերն՝ Թիւ 191։

5 Ոմանք զանցսն առեն 686 Չ. բարձր, զգագաթանն՝ իբր 500։

չազգեստ գնդիցն Եւրոպէացւոց՝ յազատութիւն տնօրինական տեղեաց։ Առանց յերկուանաց 'ի դէպ է ճանաչել զսա մի 'ի յոյժ երևելի և բազմակոխ անցից երկրի. և եթէ օրէն իցէ ասել, խողովակ մի անձուկ՝ ընդ որ գնացին յորդահոսանք մարդկութեան. և այժմ իսկ արահետ է անընդհատ կարաւանաց և երկայնատող երամակաց ուղտուց և գրաստուց, լեռնաշու կենդանական նաւուց, որք աստի զարգասիս բարեբեր հովտաց Եփրատայ և փոքուն Ասիոյ, անտի զձեռագործս և զվաճառս Եւրոպիոյ տարուբերեն, յաճախագոյնս՝ յԱղեքսանդրեակ։ — Վսեմագեղ է և տեսարանն որ 'ի բարձանց անտի, յառաջոյ և 'ի թիկանց ունելով զպարս Ամանոսեան լերանց, և անդրագոյն 'ի հիւսիսոյ նշմարելով զբարձրագահն Տաւրոս. յաջմէ և յահեկէ՝ զՍիրիատական հովիտս և զկապուտակ Ծոցն Հայոց. զոր՝ ոմն 'ի յետին անցորդաց՝ նման գտանէր տեսլեան Լեմանեան լճին (Ճինեւայ) 'ի բարձանց Յուրայ (Jura) լերանց դիտելով։ — Ի բուսական բերոց սահմանաց Անցիցս՝ նշանակէ նոր ոմն անցորդ՝ գեղեցիկ թուփ մի յազգէ Դափնեաց (Daphne Seriaca), և զգեղեցկագոյն Նուիճն Դիոսկորիտեան (Arum Dioscoridis), որ կոնաձև իմն կցցանման ամբառնայ, թաւշատեսակ, սևակարմիր, պայծառ գունով, այլ ժանտ նեխահոտ։ Ի գերրուկս աւերակացն զեռան մեծամեծ մողիզք (Stellio vulgaris), զարշատեսիլ այտուցս 'ի վերայ կռանցն ունելով։ — Այլ դժպհի քան զսոսա են դողաբարոյ Քուրդք և Թուրքմանք՝ որջացեալք շուրջանակի, յուսով աւարի բազմահարուստ կարաւանացն, աներկիւղք 'ի պահնակաց կայանին։ — Գետակ մի Սեաւ-ջուր կոչեցեալ (Գարա-սու) 'ի հիւսիսոյ կուսէ իջեալ և խառնեալ ընդ խորաձորն Պէօյիւք-պօղազ (Մեծ փող կամ Նեղուց) անցանէ առ պահակաւն. առ որով մերձ 'ի մուտս կածանին՝ կառուցեալ են երկու իջևանատունք և պահակատուն մի. վերագոյն ոչ շատ հեռի 'ի Դրանէն՝ գեօղ մի է Ջաքալ կոչեցեալ։ Ի հիւսիսակողմն մերձ 'ի Պէյլան ամբառնան անջատ որձաքարուտ կուտակք, նշանակք հրաբղխային երկրի։

Քաղաքաւանն Պէյլան կամ Պիլան بيلان , որ և Պէյլէնկ ըստ Թուրքաց, թուի կոչեցեալն 'ի հնումն Պիկտանու, Pictanus[1], զի 'ի ճահ գայ տեղին Երուսաղեմեան հին ճանապարհագրութեան, ինն մղոն յԱղեքսանդրեկէ և ութ 'ի Պաղրասայ տարակաց զոլ. յերկուսին կողմանս անձուկ ձորակի կառուցեալ իբրև 'ի 600 Զ. բարձրաւանդակի, որոյ տրամագիծ է 50 Զ։ Աստիճանաձև դար 'ի դարի վերայ հաստատեալ են տունքն, և պարտէզք 'ի տափարակս ուրեք, գեղեցիկ տեսլարանաւ[2]. 'ի ստորև հայելի իմն ունելով զգետակն համանուն՝ որ 'ի Տաւս լեռնէ իջանէ, և շուրջ զզանազան կերպարանս ծառոց և ժայռից. զով և առողջասուն օդովք և առատահոս ջրովք. վասն որոյ և ամարանոց է բնակչաց Աղեքսանդրեկի։ Ի վերնակողմն քաղաքաւանին, 'ի վերուստ 'ի զառիվայր ձորոյն ագուգայիւք բերեալ լինի ջուր՝ որով և զպարտէզսն ոռոգանեն, և աւելորդն սահանաբար ստորիջեալ հոլովէ զՋրաղացս։ Բնակիչքն Հայք, Յոյնք, Թուրքք և Եւրոպացիք, ոգիք իբր 2000 կամ աւելի. ոմանք 'ի մերայոց 3 կամ 400 տուն ասեն զազգայինս. իսկ նորագոյն ուղևորք եւրոպացիք՝ 100 տուն միայն։ Մահմետականք համարին 150 տուն, յորոց կէսք ազնուականք՝ Պէյլանպէյլէրի կոչեցեալք՝ ունին կալուածս մինչև ցԱնտիոք և ցԱրսուս։ — Էտիպ ուխտագնացն Մէքքէի, երկու դարուք յառաջ, քաղաք մի բարգաւաճ ասէ զՊիլան, իջևանատամբք, բաղանեօք և բազմաթիւ տամբք. նշանակէ 'ի վաճառսն զխաղող, զմիրգս և զխճուղն քիւֆթէր կոչեցեալ. 'ի շէնսն՝ զմզկիթ սուլտան Սէլիմի՝ որ 'ի սպառուած շուկային, և զիջևան Սիւլէյմանի։ — Յամի 1639 անցեալ ընդ Պէյլան՝ կարմեղեան քարոզիչն Հ. Փիլիպպոս, ագաւ ('ի 16 ապրիլի) առ Առնաւուտ? կոչեցեալ Հայազգւոյ. գովէ զբնակութիւն քաղաքին և զառատութիւն ջուրց։ Ունին և այժմ 'ի Պէյլան Կարմեղական միաբանութիւնքն վանատուն և դպրոց։ — Նշանաւոր քան զամենայն 'ի լեռնաքաղաքիս՝ են ագուգայքն, ուրեք երեքկարգեան[illegible]ք մի զմիով, որք և կամուրջք կցորդութեան են երկոցուն մասանց քաղաքին՝ աստի և անտի ձորոյն, ընդ որ օձապտոյտ գնացիւք ստորիջեալ գետակին՝ թափի 'ի ծով, ութ բնամղոնաւ հեռի յԱղեքսանդրեկէ։ — Յակոբ Նալեան՝ Պէյլէնկ կոչելով զտեղիս այսպէս ստորագրէ, հանդերձ ջրովն, կից փայտաւ ասելով լեռան մի, « յորոյ 'ի կատարն է Պէյլէնկի մեծ գիւղն, » յորում կան շատ Հայ տնուորք, և ունի մէնզիլխանայ » այս Պէյլէնկս. և 'ի լեռնէն վռազ ջուր մի իջանէ, որ » թէ կամկար գնայր՝ լինէր գետ մի խորագոյն։ Այս Պէ» լէնկ 'ի վերայ ձառէ ճանապարհին է՝ որ գնայ յ' Իսքի» գաւուլու, և անտի 'ի մեծն Անտիոք։ Յայն լերին վե» րայ՝ փայտաւ եայլան է յոյժ գեղեցիկ. յորում բնա» կիչքն՝ յամարայնի պատուէն զգնացող միւսաֆիրսն » հաւկըթի կերակրով, զանազան կերպիւ եփելով »։ — Յոյժ սպլազգ նկարագրէ մի ոմն 'ի հարց մերոց՝ յամի 1773 օթևանեալ աստանօր, 'ի տան գունցին Փռանկաց, և գրէ վասն բնակչացն. « Մահմետականք և Հայք ամե» նեքեան աւազակք են առ հասարակ. սորին վասն » դեսպանն ամբհովանեաւ ձիաւորեալ ընդ առաջ մեր » տարաւ զմեզ 'ի Բէլան...։ Յելանելն մեր յանառիկ » լեռան՝ գնալ ընդ քարավէժ ճանապարհն Բէլանայ, » ջորեպանքն խօսէին ընդ միմեանս, բայց ոչ իմանայաք » զբարբառ նոցա, զի ոչ Արաբացւոց, ոչ Մարաց, ոչ այլ » ազգաց և ոչ Հայոց նմանութիւն ինչ ունէր. իսկ մեք » զարմանայաք ընդ լեզուախօսութիւն նոցա. ապա այլ» ազգական լեզուաւ հարցի ցնոսա, թէ յորո՞ց ազգաց էք » դուք. նոքա պատասխանի ետուն թէ, Հայ եմք և հա» յերէն խօսիմք..։ Ապա ուշ եղեալ մեր բանից նոցա՝ » սակաւ ուրեք բառս ինչ հայերէն իմանայաք..։ Յաւուր

1 Ի պատմութեան մերում ոչ յիշատակի կարեւորս այս տեղի, կամ գէթ ոչ այսու և ոչ այլով ծանօթ մեզ անուամբ. իսկ մերձաձայն՝ գտանեմ միայն զԲէ-լօ-մ, որոյ տէր Լեւոն, Levonius de Biulum, մի էր 'ի ստորագրողաց պայմանթղթի Լևոնի Ա թագաւորի՝ զրաւականնելոյն զձկեր զաւառ առ Հիւրական ասպետս։

2 Պելճիօյօզօյ տիկին՝ որ գիշերօթեաց 'ի սմին (1852), Պէյնամ կոչէ, ըստ աղաւաղ լսելութեանն. La petite ville de *Beinam* . . . éparpille ses maisons depuis le fond du ravin jusqu'au sommet des montagnes, occupant ainsi un plus vaste espace qu'il ne convient à sa chétive condition. — Belgiojoso, 129.



194. Պէյլան եւ Սեաւ լերինք



195. Կապան Պէյլանայ, ՚ի ծովակողմանէ

» միում եկին 'ի տուն դեսպանին առ մեզ հինգ վեց զի-
» նեալ անձինք, խնդրել 'ի մէնջ սաղմոս և աւետարան..։
» Ասացի, թէ զի՞նչ առնելոց էք զսաղմոսն և զաւետա-
» րանն. մի ոմն 'ի նոցանէ պատասխանեաց, թէ Ես
» Տէրտէր եմ։ Ասեմ ցնա. Այսպիսի զինեալ տէրտէր
» լինի՞. և նա պատասխանի ետ, թէ՝ Տեղւոյս տէրտէրն
» այսպէս է։ Ասեմ ցնա, թէ՝ Ա՞յսպէս զինուք գնաս յե-
» կեղեցին։ Այո, ասէ, 'ի մտանելն իմ յեկեղեցին՝ մեր-
» կանամ զզէնս, և յետ պատարագին զինեալ ելանեմ
» յեկեղեցւոյ »։ Զքարս իւրեանց յայտնեցին՝ յանկանել պատմողին յուղի յետ աւուրց՝ ընկերաւն. զի երկոտասան արք զինեալք 'ի վերայ հասեալ՝ արգելուին և պահանջէին դրամ. և յընդդիմանալ նորա՝ « մինն 'ի նոցա-
» նէ վազս առեալ եկն առ մեզ, որ էր Հայ, և ասէ.
» Փատրի, ասոնք չուն են. պէտք է որ ոսկր մի ձգեսջիք
» սոցա. և անցեալ գնասջիք ». և նորա տուեալ սակաւ դահեկանս, « հազիւ թողին զմեզ, ասէ, բարբարոսքն
» գնալ[1] »։ — Ի լեռնամիջի՝ 'ի հիւսիսակողմն՝ կայ բերդ մի Պէյլեան Գոստանդէ կամ Պուսդանտա կոչեցեալ. և 'ի միում 'ի սեննակացն՝ չիրիմ, և խրձունք հին նետից։ — Գեօղ մի ևս է 'ի կողմն Աղեքսանդրեկի՝ Քիւրտլիւ անուն, աւազակաբարոյ մարդկան բոյն. որում մերձ է և Ադդիկ? (Attyk) գիւղ, և 'ի նմին աւերակք եկեղեցւոյ որբատաշ քարամբք։

Ի Պէյլան և 'ի չուրջ սահմանսն մղեցաւ առ մեօք միւս ևս գրեաթէ բաղդավճիռ պատերազմն մեծ, Օսմանեանցն և Եգիպտացւոց, յամի 1832, 'ի 29 ամսեան յուլիսի. յետ պարտութեան առաջնոցն 'ի Հեմս, սպարապետն Հիւսէյին անճարեալ եկեալ կալեալ էր զանցս Պէյլանայ և ամրացեալ 'ի նմին. փութացաւ և Իպրահիմ յետ յաղթանակաւ մտիցն 'ի Հալէպ, գալ այսր. և ընդ երկուս բաժանեալ զզօրսն՝ երկուստեք փորձեաց բանալ մտանել ընդ Ամանոսեան Դրունքս. այլ ոչ սակաւ վտանգեցաւ 'ի հրձգութենէ Օսմանեանց, որք յամենայն դիպան տեղիս բարձանցն և կրճից՝ կարգեալ էին բաղխոցս, և մաքառէին յամառութեամբ. այլ յետոյ ուրեմն յաջողեաց Եգիպտացւոց ընդդիմահարել և խափանել զհրետս նոցա, և ընդ կատարս լերանց իջանել անկանել 'ի վերայ գնդից սպարապետին և աղմկեալ 'ի փախուստ խուճապեցուցանել. ոչ ինչ ընդհատ 'ի զինուց՝ և դժուարութիւն վայրացն օրհասաբեր լինէր փախըստէիցն։ Երեքտասան հազար արանց ասի կորուսեալ Օսմանեանց յայնմ կռուի, զատ 'ի գերեաց, և քառասուն հրետս։ Բովանդակ երկրին Ասորւոց տիրացաւ Իպրահիմ այսու յաղթութեամբ յայնմ աւուր. այլ ոչ սակաւ քանդումն եհաս և քաղաքաւանին Պէյլանայ 'ի ռմբակոծութենէ երկոցուն բանակացն դիմամարտից։ — Ամայացեալ ետես զայն ուղևոր ոմն վայրաքնին Անգղիացի յերկրորդում ամին, գիշերայն հասեալ անդր. զորոյ, և զիւր իսկ տեսութիւնս՝ այլ ոմն (Իտալացի) այսպէս երկրորդէ.
« Ցառաջեալ էր գիշերն. և էին ժամք ոչ սակաւ յորմէ
» հետէ բարձրացեալ լուսնի ընդ ոլորտս, զեղոյր զար-
» ծաթափայլ ճաճանչսն 'ի վերայ տանց և 'ի վերայ բլ-
» լերն. լռութիւն էր առ հասարակ. բայց միայն զամու
» զամու լսելի լինէր ձայն հսկող միւէզզինին՝ 'ի բարձանց
» մզկթին կարդալով զաղօթս։ Հեշտալի էր ուղևորին
» յայսպիսում գիշերի լինել 'ի Պէյլան։ Ելանելով յամ-
» րաքայլ ընդ ծամածուռ զառ 'ի վեր շաւիղ բլերն, նկա-
» տէր 'ի ստորև չուրջանակի ցցիր և ցան բնակարանս,
» յորոց պատուհանս մերձ ընդ մերձ փայլէր յետին
» նշոյլ ճրագի և հուպ ընդ հուպ շիջանէր։ Վայրկեանք
» ինչ ևս, և ահա յասպնջական յատակին տարածեցի և
» ուղևորին մահիճ պարզունակ։... Այլ մի՞թէ ինչ իցէ
» նմա փակել զաչս 'ի քուն, մինչդեռ լուսին ամենայն
» պայծառութեամբ լուսոյն շողայ 'ի վերայ վախիցն և
» պուրակաց, և 'ի գահս Ամանոսի։ Ի ձախմէ կողմանէ
» գերեզմանք են հանգստեան ոսկերաց, ո՞ գիտէ քանի՛
» ազգ սերընդոց. յաջմէ՝ մզկիթն բարձրակատար տա-
» նեօքն և սպիտակափառ մինրայիւն, և 'ի վերոյ քան
» զայն՝ մեծագոյն իջեվանատուն քաղաքին՝ յեցեալ իմն
» 'ի քարաժայռն, յորոյ պատուհանացն փոքրկանց ցոլան
» ճաճանչք լուսոյ. ագուգայ հնաշէն անցանէ ընդ հե-
» ղեղատն, ընդ որոյ կամարօք հոսի 'ի բարձանց ջուր լե-
» րինն..։ Նշմարիւր և փոքրիկ գերեզմանատեղի Պէյլա-
» նայ՝ սպիտակ մահարձանօքն, որոց զգեցեալ զտխրամած
» ճաճանչս լուսնին՝ թուէին իմն բերել զկերպարանս ըս-
» պիտակաքօղ եղերամարց ողբացողաց 'ի վերայ շիրմաց
» սիրելեաց իւրեանց. տապանագիրք անգամ՝ որով ծած-
» կեալ են մահարձանքն՝ երևէին աչաց որոշակի և պայ-
» ծառ. ընթեռնուլ ոչ կարէաք, այլ գիտելն զի նշանակք
» էին զորովոյ՝ որ յաւուր միում կենդանի էր 'ի վերայ
» երկրի, խանդաղատէր զոգիս. և ամենայն ոք 'ի գաղտ-
» նիս սրտի իւրոյ, ոչ խորհելով ոչ զանուանսն դրոշ-
» մեալս 'ի վէմսն, և ոչ զձեռն փորագրողին, մաղթէր
» հանգիստ ոսկերացն, և քաղցրանալ արդարութեանն
» Աստուծոյ 'ի վերայ խաղաղելոցն անդէն։ Ցորժամ ար-
» տասուալից աչօք նկատեմք զկեանս աշխարհիս, ո՞հ, թէ
» քանի՛ սևորակ երևի. յո՞յք սնոտիք. վայրապար խէթք
» երկեղի. հոգք մշտնջենաւորք. ահաւադիկ որ երևու-
» թանայն մեզ պատկեր։ Գերեզմանոց մի փոքրիկ 'ի
» կատար առապար բլրի, յորմէ լսելի լինի հեռաւոր խո-
» խոջիւն մենաճեմ առուակին՝ սահանակարկաջ իջելոյ
» վախից 'ի վախս՝ 'ի գլխոյ լերինն. որպիսի՛ հնչումն
» խաղաղական. որպիսի՛ հրաւէր հանգստեան։ Զայն յա-
» ւիտենականութեան թուի թաքուցեալ 'ի նմին։ Զովա-
» գին հովանիք հիւրընկալ ծառոց՝ ծածկեն զկէս մթա-
» պատ դամբանացն, մինչդեռ միւս կէսն պարզի ընդ-
» ունել զճառագայթ, զոր երկինք՝ բնաւից արդարադատ՝
» առաքէ 'ի վերայ նորա 'ի բարձանց փառաց իւրոց[2] »։

Այլազգ իմն ակնարկութեամբ հետազօտեալ և բնագիտաց՝ նշանակեցին ոչ սակաւ ազգս և տեսակս բուսոց 'ի սահմանս Պէյլանայ[3]։

1 Հ. ՊՕՂՈՍ Վ. ՄԷՀԷՐԵԱՆ, յԱռինն գեղջէ Մշոյ։
2 ՊՐԻԱՆՈՑ, 409-11։
3 Որոյք են Գարին քնքոյշ (Anemone blanda), Ելլեբորոս փամփշտակայ (Helleborus vescicarius), Տափկի տերևախոխ (Thlaspi perfoliatum), Մանուշակ թիթեղնաւոր կամ սաղարթախիտ (Viola bracteolata), Աղթաղբուկ Լաւատերեան (Alcea Lavatereflora), Կաղնամերգ տարածուն (Adenocarpus divaricatus), Հաւամրգի ինչ թևազգեաց (Gonocytisus pterocladus), Նիզակաշուսփ Քոչեայ (Doryclinum Kotschij),

յին մասն կոչի Հուռ), վրանք են Հայոց խաշնարածից, առ Գարաճա-խան ձորով։

Ցայժմեան Ազիր գաւառի՝ ընդ համանուն վիճակին և ընդ Պայասայ՝ կարգին և վիճակքն Ճէրիտ, Թաճիրլի, Գայալը տոհմի, և Ալուս, որոց դիրք չեն ինձ ծանօթք. այլ յետինն իբրև գեօղ մի յիշատակի յամի 1186 'ի պարգևագրի Ռնալտի ուրումն Մազոէր կոչեցելոյ, որ ընդ Վալենիոյ քաղաքի և Մարկաղայ (երկոքին ևս 'ի հարաւոյ Անտիոքայ), տայր Հիւանդանոցի ասպետացն և զայդ գեօղ Alus, և այլս յոլովս, յորոց գէթ զոմանս 'ի դէպ է դասել 'ի կողմանս յայսոսիկ. և զի հայալուր ևս են անուանքն, նշանակեսցուք զոմանս. որպէս, Կոմ կամ Գոմ գիւղ, Come, Պոպոս կամ Բոբս? բերդ, Bobos, համանուն գիւղիւ. Կազնափոր, Casnapor, Կոլկաս, Colcas, Կորկոնէ, Corconai, Մունձարակ կամ Մունսարակ, Mounsarac. սոքա ասին լինել 'ի Palmeris լերին. իսկ Պոտամա, Potama, և Բանջերեգուն, Pangeregun, (Բանջարագոմ?), 'ի Ռուսէ հովտի. ևս և Գոռոզ, Gorrosie, Մաստաբ, Mastabe, և այլն. ընդ սոսին տուեալ էր և Ս. Գէորգ վանք զոր 'ի Թիւս վանորէից Սեաւ լերին նշանակեցաք, և միւս ևս վանք՝ որոյ ոչ յիշի սրբազան անուն, այլ կոչի վանք Պարլերոյ լերին, Abbatiam Montis Parlerii. որ իցէ Թերևս վանքն Պաղլահոյ, այն՝ զոր յիշատակեցաք 'ի Թիւս վանորէից Սեաւ լերանց։

198. Յիշատակարան Աւետարանի գրեալ յԱրքայեղբայրն Յովհաննէս. (Տես յէջս 146. 291. 298)։

## Գ· ՀՌՈՍՈՍ, ԵՒ ՍԱՀՄԱՆՔ ԱՆՏԻՈՔԱՑ

138 · Աւարտ սահմանաց Կիլիկիոյ համարին բազումք՝ զԴրունս Ասորւոց կամ զՊէյլան. այլ իշխանութիւն Հայոց տերանց երկրին՝ ընդարձակեալ զայն 'ի հարաւ կոյս մինչև 'ի Ռասխանձիր, որ բնականագոյն ևս սահմանահատ է, վասն յայն յանգելոյ գլխաւոր պարուցն Ամանոսեանց. ընդ որս անդրավարեալ յաջողելոցն՝ տիրեցին և արևելակողման լերանցն, զի կարևոր բերդորայք էին անդ, և մերձեցան 'ի սահմանս Անտիոքայ, որում երբեմն վիճակեալ էին կողմանքս, և յետոյ անհակառակ մնացին 'ի ձեռս Հայոց, մինչև 'ի յափշտակութիւն Եգիպտացւոցն: Զառաջինն՝ Թորոս Բ տիրացաւ այսոցիկ, յորժամ նիզակակցութեամբ Ռնալտայ Բրնձի Անտիոքայ՝ թափեցին զբերդեանն 'ի Յունաց, որոց կորզեալ էր զնոսին յԱսպետացն. և ապա գժտեալ Ռնալտայ՝ պահանջէր զայնոսիկ 'ի Թորոսէ՝ իբրև իւր սահմանորդս. և եղև վասն այսր խնդրոյ պատերազմ խիստ ընդ նոսա՝ 'ի սահմանս Աղեքսանդրեկի, և յերկոցունց կողմանց անկան ոչ սակաւք. այլ յաղթող գտեալ Թորոսի՝ հալածեաց զԲրինձն յԱնտիոք, և ապա « իւրով կամօք ետ 'ի Ֆրերքն դղեակն՝ որ » կայր 'ի սինօռն Անտիոքու. և նոքա երդուան նմա օգնել » Հայոց՝ յամենայն կարիս՝ մահուչափ, և յամենայն իրս » ցաւակցեալ[1] »: Այլ 'ի վերստին ծագել հակառակութեան ընդ Հայս և ընդ Անտիոքացիս՝ 'ի սկզբան թագաւորութեան Լևոնի, իբրև ասպետքն Տաճարականք զփռանկաց կողմն կալան, մերժեաց զնոսա թագաւորն, և կալաւ յարքունիս զբերդեանն, վասն որոյ երկար վէճք և խնդիրք եղեն. և ոչ զայնոսիկ միայն՝ այլ և 'ի

« ՅԱրասուս զաւառն եկեալ,
Եւ Պաղրասայ դղեկին տիրեալ »,

ըստ Վահրամայ, որ յեղու 'ի չափս՝ զպարզ ասացուած հնագոյն յիշատակագրի, թէ, « Էառ զԱրասուս և զՊաղրաս »: Զյետինս՝ որ գրեաթէ կիսով փարսախաւ ևեթ հեռի է 'ի Քարամուտ իջևանէ, և զԴարպսակ՝ հաւասար կիսօրեայ հեռի առէ Սանուտոյ՝ յԱղեքսանդրեկէ և յԱնտիոքայ: Ծանօթ է և արդ երկու կամ երեք փարսախօք 'ի հարաւոյ արևելից Պէյլանայ, և իբր քան մղոնաւ յԵւ. Հս. Անտիոքայ, ('ի ստորոտս Ամանոսի և մերձ 'ի կապանն Ասորւոց Դրան, որ և մասամբ արդ 'ի Թուրքաց յանուն սորին կոչի Պաղրաս–պէլի), և Դուռն Անտաքայ յարքունական պատմչէն մերոյ. վերագոյն քան զայն՝ միջասահման ընդ Պէյլան և ընդ Պաղրաս՝ կայ գեօղ մի Գարուլ կամ Գարաեօլ, իբր 'ի 500՛ Զ. բարձու: Զայս նեղուց՝ Սեմայ Կապան կոչէ Գրիգոր Տղայ կաթողիկոս՝ յՈղբս Երուսաղեմի. ուր՝ և յետ առման Սարայի, այսինքն է Դարպսակոյ, ծանուցանէ հրոս երթեալ ասպատակաց Սալահէտտինի, այսպէս տողելով.

« Դարձան 'ի միւս Քարըն գնացին,
Որում Սեմայ կապան կոչին.
Առեալ և զայն՝ խրախանային
Ընդ հաւասար տիրել նոցին »:

Ամաւ յառաջ քան զաղիտաբեր արշաւանն՝ որ 'ի 1266, զնոյն կամեցեալ էր առնել Պիպարսոյ. այլ նախազգաց եղեալ Հեթմոյ՝ արար « աշխարհաժողով, և գնացեալ եհաս » մինչև 'ի տեղի ինչ, որ կոչի Դուռն Անտիոքայ, և » անդ զտեղի կալեալ մնայր », ասէ արքունի պատմիչ մեր. իսկ սուլտանին եկեալ մինչև յեզր Սեաւ ջրոյ՝ գետոյն Անտիոքայ, և լուեալ 'ի լրտեսացն զպատրաստութիւն թագաւորին, « երկեաւ մտանել յաշխարհն Կիլիկիոյ, այլ դարձեալ գնաց յԵգիպտոս »: Բայց յերկրորդում ամին՝ յետ կատարելոյ զգործն դառնութեան 'ի Մառի և 'ի Սիսուան, զօրք նորա ընդ այս « ընդ Դուռն » Անտիոքու գնացեալ՝ եկին ամենայն աւարաւն »: Գուցէ առ այսու Դրամբ եղև և ասպատակն և սպանումն Եաղուպ Արսլանայ, զոր յիշեցաք վերագոյնդ առ Դռնակաւն:

Պաղրաս 'ի հնումն համարէր 'ի գաւառի Անտիոքայ, և կոչէր 'ի Յունաց Պաղրէ, Πάγραι, և կայ առ վտակի միոյ օժանդակի Որոնդէս գետոյ՝ Միւէյտաա կոչեցելոյ, որ կարծի կոչեցեալն 'ի նախնեաց Արկեւթոս, Arceuthus, ունելով 'ի թիկանց զսեղանաձև լեառն մի՝ Տրապիզ կոչեցեալ, ուր Վենդիտիոս զօրավար Հռովմայեցւոց, ասեն, 'ի նեղ արկ զՊարթևացն զօրապետ Հրանիկատ?: Արաբացի պատմիչք՝ ըստ մերոցս՝ Պաղրաս կոչելով بغراس, ասեն 'ի լերին կառուցեալ, և բերդ բարձր ունել, յարևմտից Գարիմ՛? հովտի, յոյժ ամուր և դժուարամատոյց, զոր անտիոքացի փռանկ իշխանք ունէին զառաջինն՝ յետ հաշտութեանն ընդ Թորոսի. առ որովք Կիրարտ Եւստաքեան՝ իշխան Սիդոնի՝ հալածեալ 'ի թագաւորէն Երուսաղեմի՝ վասն հինահարութեանցն, ապաւինեցաւ 'ի Բրինձն, և նա ետ նմա զՊաղրաս բերդ. այլ իբրև սաստ ևս սկսաւ աւազակել ընդ ծով և ընդ ցամաք՝ 'ի բաց հալածեցաւ, և տեղին տուաւ 'ի պահ ասպետաց[2]: Զկնի առման Երուսաղեմի՝ տիրելով քաղաքացն Ասորւոց՝ յառաջեաց ցայս վայր մեծ երկրակալն Սալահէտտին, և նախ նուաճեալ զԴարպսակ, ապա պաշարեաց զՊաղրաս, ('ի կէս ամսեան սեպտեմբերի, 1189 ամին). քրթմնջէին զօրավարք նորա վասն 'ի զուր մաքառելոյ ընդ անառիկ տեղւոյն, մինչ առ կռան կայր քաղաքըն մեծ Անտիոք, զոր թէ պաշարեալ առեալ էր՝ ինքնին

1 Զայս աւանդէ Միխայէլ Ասորի Պատմիչ, կամ Թարգմանիչն:

2 Եւ այս՝ 'ի Պատմութեան Միխայելի Ասորւոյ աւանդի:

անձնատուր լինէր բերդն այն. բայց սուլտանն վիճակ արկեալ՝ ընտրեաց պնդել զպաշարումն բերդին. և Թողեալ զմասն մի բանակին առաջի քաղաքին՝ ինքն եկն այսր, և սկսաւ մանգղիոնօք բաղխել զամրոցն. այլ ոչ ինչ կարաց ստնանել, վասն Թանձրութեան և բարձրութեան պարսպացն, ևս և սակս պակասութեան ջրոյ, ընդ որ աւաւել ևս զանգատէր զօրականն. իսկ սուլտանն ետ պեղել աւազանս և լնուլ ջրով և հանդարտել զոգիս նոցա։ Զայն զգացեալ բերդացեացն, և երկուցեալ գուցէ չարի պատահիցեն 'ի յերկարել պաշարմանն, առաքեցին պատգամաւոր հնազանդութեան. և նա ետ պայման, որպէս և յառնուլն զԴարպսակ, զի Թողեալ պահապանացն զզէն և զկարասի՝ մեկնեսցին լոկ հանդերձիւք իւրեանց. և ընդ պատգամաւորին առաքեաց զնշան իւր կանգնել 'ի վերայ պարսպացն։ Ըստ պայմանին եդելոյ 'ի բաց մեկնեցան պահապանքն, Թողեալ անդ զամենայն ինչս և զպաշար. զորս առեալ Սալահէտտինայ՝ հրամայեաց քանդել զբերդն։ Վասն այսր իրի մեղադրէ զնա զգօն պատմիչն արաբացի՝ Էլ-Աթիր, որ և Թուի 'ի բանակի անդ լինել. քանզի ընդ հուպ եկեալ, ասէ, որդին Լևոնի տէրն Հայոց[1], որոյ սահմանացն մերձ էր, շինեաց վերստին զՊաղրաս բազում խնամով, և կարգեաց անդ գունդ մի զօրաց, սփռել ասպատակ 'ի մերձաւորս. և ցարդ իսկ, ասէ, 'ի ձեռս Հայոց է Պաղրաս, յորոց ասպատակէ ոչ սակաւ վնասին անդստանք շրջակայիցն Հալպայ[2]։ — Գործ մի նշանաւոր գործեաց աստ Լևոն և սակաւուք զկնի, այն է յամի 1193. զի մինչ կամէր Բրինձն Անտիոքայ ըմբռնել զնա խաբէութեամբ, սորա իրազեկ լեալ, զանխլակի ծանուցմամբ իշխանուհւոյն, եկեալ 'ի Պաղրաս՝ հրաւիրեաց անդր զերկոսին ևս. « և նոքա եկին յօժարութեամբ. և Լևոն ել ընդ ա- » ռաջ նոցա, և մեծարեալ եբեր 'ի Պաղրաս. և անդ կա- » լաւ զԲրինձն, և տարեալ եդ յորգելանս, 'ի կլայն » Սիսոյ... և եկեալ յԱքայոյ Թագազարմ իշխանն Գունթ » Հենրին (Comte Henri), և խնդրեաց զնա պարգևս 'ի » Լևոնէ. և նա շնորհեաց նմա[3] », և այլն։ — Սահմանակալ բերդ տէրութեան եղև յայնմհետէ Պաղրաս. և աստ սկսանի պատմիչ մեր Թուել զդասակարգ բերդից և բերդատեարց՝ 'ի Թագաւորութեան Լևոնի, որոց աւագագոյնին՝ Սիր-Ադամայ՝ վիճակեցուցեալ էր զայն, որոյ որպէս տեսաք, ընդարձակ կալուածք էին 'ի հովտին Կապիկաղնոս գետոյ։ Յետ վեշտասան կամ եօթնևտասն ամաց, այն է յամի 1236, սուլտանն Հալպայ առաքեաց զհօրեղբայր իւր Թուրան-շահ՝ պաշարել և առնուլ զՊաղրաս, զոր ունէին յայնժամ Տաճարական ասպետք, 'ի Լևոնէ կամ 'ի Հեթմոյ ընկալեալ. այլ ոչ կարաց առնուլ, որպէս ասէ Սմբատ, յաւելլով, « զի եկեալ էր չաստ հեծելով 'ի վերայ Պաղրսայ ». իսկ արաբացի մեծ ժամանակագիրն Ապուլֆէտա՝ մարթ էր, ասէ, առնուլ զայն Բերիացւոյն, եթէ չէր դաշն հաշտութեան կռեալ ընդ Բրինձին Անտիոքայ։ Յետ առման Անտիոքայ՝ Պիպարս առաքեաց զզօրսն 'ի վերայ Պաղրսայ, ('ի 27 մայիսի, 1268), զոր գտին լքեալ 'ի պահապանացն անյուսից յետ նուաճման մեծի քաղաքին. և Եգիպտացին կարգեաց անդ պահապանս, լցեալ զինուք և ամբարօք, լինել իւր բերդ սահմանակալ։ Յայնմհետէ ոչ ևս լսի համբաւ ամրոցին 'ի պատմութեան. և ուր ուրեմն յետ երկերիւր ամաց (1407), հազիւ անգամ 'ի յայտ եկեալ յասպատակութեան Զիւլգատրեանն Շահսուարի, իսպառ զանխլանայ. սակայն հարկ է թէ ոչ անհետանայ, և յուսալի է նշխարս ինչ յիշատակաց կամ նշանակս ինչ ասպետականս՝ թէ ոչ և հայկականս՝ գտանել անդ խուզարկուաց։

Զնոյն իմանալի է և վասն Դարպսակ բերդի, զոր նոյնպէս կոչեն և Արաբացիք՝ دربساك, և Լատինք Trapasa[4]։ Իբրև խեղեփք իմն շինալոյրք՝ հանապազ զոյգ յիշին 'ի պատմութեան՝ Պաղրաս և Դարպսակ, յայտ է թէ մերձակիցք գոլով. Սանուտոյ՝ կիսօրեայ հեռի ասէ զնոսա 'ի կապանէ Սևու լերին և 'ի ստորոտս նորուն, և կոչէ Պագարաս և Տրապասա, Duo castra, Bagaras et Trapasa, ad pedem montis. Նոր տախտակ մի տեղացոյց՝ յարևմտից Քարամուտի՝ և 'ի հարաւոյ Պաղրասայ՝ նշանակէ զԴարպսակ. այլ բանք մերոյ պատմչին Թուեցուցանեն 'ի հիւսիսոյ նորին լինել, և 'ի բարձրագոյն ևս վայրի. քանզի ասէ վասն Սալահէտտինի, եթէ յետ Պաղրասայ « 'ի վեր մատուցեալ՝ կռուեցաւ ընդ Դար- » պսակն ». այլ Թերևս չափազանց իցէ տասն մղոնաչափ ընդ Հս. Եւ. Պաղրասայ գրել զայն, ըստ այլոյ ումեմն։ — Անուն տեղւոյն տայ կարծել զայն դաստակերտ Հայոց, իբրև Դարպասակ գրելի, բայց յառաջ քան ըզԽաչակրաց ժամանակս. և ոչ միայն բերդ՝ այլ և աւան գոլ առ նովաւ. զի անշուշտ սոյն սա է որ Թուրքաց բարբառով Թարգմանեալ կոչի Սարայ, որպէս գրէ Գրիգոր Տղայ յՈղբս առման Երուսաղեմի, ցուցանելով միանգամայն՝ զի 'ի հիւսիսակողմն ծովակին Անտիոքայ էր տեղին, յոր գալով Սալահէտտինեանց 'ի կողմանց Ասորւոց,

« Այս 'ի միւս կողմանն անցին,
Ի հիւսիսոյ Անտիոքին.
Իջին բանակքն 'ի լայն դաշտին՝
Մերձ 'ի ծովակն՝ որ անդրստին.
Պատեալ զամուր տեղ պահեստին՝
Որում Սարայն անուանէին.
Զօրաց պատնէշ եդեալ նորին
Եւ մեքենայս անհընարին.
Եւից քարիւ մանքանային,
Եհար նետիւ լայնալըճին.
Մինչև կարի վիրեալ նոցին
Որք անդ յամուրըն բնակէին,
Եւ յոչ կամաց նոցայն սրտին
Ի յանկմանէ իսկ պարըսպին՝
Ելին արտաքս առ Թշնամին.
Էառ և զայն Հագարացին »։

[1] ابن ليون صاحب الارمن, Իպնի Լիվուն Սահէպ էլ Արման։ Որդին Լևոնի ատանօր ինքն իսկ Լևոն է Մեծն։

[2] Պատմիչն մեր համառօտիւ ասէ աստ վասն Սալահէտտինի. « Գնաց 'ի Պաղրաս և հնազանդեաց զնա. և 'ի վեր մատուցեալ կըռուեցաւ ընդ Դարպսակն, և փլոյց զնա, և գնաց 'ի Դամասկոս »։

[3] Արքունի պատմիչն Կիլիկիոյ՝ Զայմանէ Ճառեսցի և յետոյ։

[4] Ըստ Ծանօթութեանց փռանկ Թարգմանչի Ա. Հատորոյ Արաբացի Պատմչաց Խաչակրաց։

Յառաջ քան 'ի Պաղրաս՝ եկն այր Սալահէտտին, յ'2 սեպտեմբերի 1189 ամի, ըստ արաբացի պատմչաց, որք՝ և մի յամրագոյն բերդորայից Տաճարական ասպետաց ճանաչեն զայն, լցեալ ամենայն կարևոր պիտոյիւք. տասն օր տևեաց պաշարումն սաստիկ, սաստկագոյն ևս դիմակալութեամբ. զի Եգիպտացիք մանգղիոնք քանդեալ զմասն ինչ պարսպացն՝ ոչ կարացին մտանել 'ի ներքս. ապա հրամայեաց սուլտանն հորդան տալ 'ի վեր և վանել զպաշտպանողսն. բաղխեցին խոյովք, և ական հատեալ կործանեցին զմի յաշտարակացն. և 'ի վաղիւն դարձան ընդ խրամատն այն խուժել 'ի ներքս, առաջնորդութեամբ Պոհաէտտին ջատագով պատմագրի գործոց Սալահէտտինի. և զարմացան տեսանելով զպարիսպսն կարկատեալս անդրէն 'ի պաշարելոցն։ Բայց հրեշտակ արձակեալ սոցա առ Պեմունդ Բրինձ Անտիոքայ՝ հարցանէին թէ կարիցէ՞ ինչ օգնել. և իբրև անյոյս մնացին 'ի նմանէ՝ անձնատուր եղեն, պայման ընկալեալ 'ի բաց գնալ լոկ հանդերձիւք զոր զգեցեալ էին, և զայլ ամենայն կարասին թողուլ լքանել առ եւեղ. և արարեալ այնպէս՝ գնացին յԱնտիոք (13 սեպտեմբեր)։ — Լևոն՝ որ յետ մեկնելոյ Եգիպտացւոց էառ և շինեաց զՊաղրաս, ձեռն ետ Ասպետացն՝ և անդրէն տիրացոյց զնոսա Դարպսակայ. այլ դարձեալ անկեալ էր տեղին 'ի ձեռս այլազգեացն. զի յամի պաշարման Պաղրասայ (1236) 'ի Բերիացւոց և 'ի մեկնել նոցա ձեռնունայն՝ փառնիք 'ի վերայ յարձակեցան, աղարտեցին զարուարձանսն, թէպէտ և ոչ միայն չկարացին առնուլ զբերդն, այլ և չարաչար հարան, և բազումք 'ի նոցանէ գերի անկան, ընդ որս տարան թշնամիք և զկառափունս անկելոցն 'ի Հալէպ. սոյնպէս զի՝ մարթ է, ասէ արաբացի պատմիչն (Ապուլֆէտա) մի 'ի նշանաւոր յաղթութեանց (Խալամոց) գրել զայն։ Յետ սակաւուց՝ 'ի գալ Թաթարաց և 'ի նուաճել զիշխանութիւն Բերիացւոց, Դարպսակ և այլ բազում տեղիք պարգևեցան նիզակակցաց նոցին՝ Հայոց. և էր 'ի ձեռս սոցա նաև յետ պարտութեանն 'ի Մառի, որպէս զի դաշնագրութեամբ 1268 ամին՝ պահանջեաց զայն Պիպարս 'ի Հեթմոյ, ընդ չորից կամ հնգից ևս այլոց բերդից, յորոց մի էր Մարզեպանն նախ յիշեցեալ։

Ընդ մէջ երկոցուն բերդից՝ Պաղրասայ և Դարպսակայ՝ գումարեաց զբանակ իւր Պիպարս յերկրորդում մեծի արշաւանին (1274), և անտի բաժանեաց գունդս հազարաւորաց՝ ընդ այլ և այլ ճանապարհ անցանել ընդ լերինս և մխել 'ի Սիսուան. և ինքն յառաջեաց մինչև 'ի Մանգապ, տեղի անծանօթ։ — Միւս 'ի բերդորէից պահանջելոց 'ի սուլտանէն՝ էր Շիհ-էլ-Հատիտ, شيح الحديد, որ թարգմանի Ծովափն սահմանակից. զի էր արդարև 'ի սահմանածայր իշխանութեան Հեթմոյ և սահմանորդ Եգիպտացւոյն, և է նոյն անշուշտ ընդ կոչեցելոյն Շեհ 'ի մերոյ արքունի պատմչէ. թէպէտ և ասիցէ զայն « տեղի » մի աւերակ... և ասէր սուլտանն, թէ տուր զտեղին » այն՝ զի չինեցից վաճառանոց մեզ և ձեզ. և թագաւորն » ոչ ետ », և այլն. և մեղադրեցաւ Հեթում յոմանց իշխանացն վասն այսր բանի. առ որ ասէին յետոյ, « Շիհն՝ » ինչ գտանէ մեզ՝ որ դու վասն Շիհայ գ.քո որդիքն կորուսեր, և զմեզ նոցա խղճին տիրացուցեր. այն լաւ » չէ՞ր թէ այն լեալ, քան մեք ամեն աշխարհի զրոյց և » ծաղր եղաք։ Իսկ թագաւորն հրամայեաց իշխանացն » լռել յանօգուտ խօսիցն », և այլն. զի ոչ վասն ագահութեան չէր տուեալ զտեղին, այլ զի մի՛ տալովն՝ բաբեկամ նմին երևիցի, և կասկածելի Թաթարաց. քանզի և մտերիմք նորա և հեռատես իշխանք արևելեան Հայոց՝ գրով զգուշացուցանէին զնա, և յետ իսկ լսելոյ զաղէտս նորա և զաշխարհին, գրէին. « Ո՞վ սուրբ թագաւոր... » լաւ է քեզ այդ՝ որ քո մին որդին վասն քրիստոնէից » մեռաւ, և մինն ծառայ գնաց, և այս Տաճիկներս յամօթ եղան, որ 'ի յայս դուրս (Թաթարաց ղանին) կան, » քան թագաւորութիւնդ ամեն անցած, և երկիրդ ընդ » նմին աւերած և քրիստոնեայքդ կոտորած..։ Թէ լեալ » էր որ խաբուել էիր, և լուր մին դարտակ տուն էիր » տուել, թող թէ չէն գիւղ, որպէս նա ուզէր, յայնժամն » քո թագաւորութիւնդ ամեն անցել էր, և մեք յամօթ » եղեալ։ Իսկ յորժամ զայս ամենայն լսեցին իշխանքն » 'ի թագաւորէն, հիացան ամենն և մեղայ ասացին թագաւորին, վասն ոչ գիտելոյ զայս ամենայն պատճառս » բանիս »։ Այսպիսի եղերական դիպաց առիթ եղև աւերակն այն և աւերածու Շիհ։ Ըստ սամանեան տեսչութեան Շէյխ-իւլ-Հատիտ կոչի արդ վիճակ մի Անտիոքայ դաւառի 'ի կուսակալութեան Հալպայ. ճանաչի և գեօղն Շէխ-քէօյ յարևելից հիւսիսոյ Անտիոքայ լճին, որ յայտ է թէ յայն կոյս Սեաւ լերանց է, այս ինքն յարևելակողմն, անդր քան զՊաղրաս։

139. Անծանօթ մնան և դիրք և որպիսութիւն կարևոր և ամուր տեղւոյ միոյ ևս 'ի սահմանքս, որ աւելի քան զտասն ամ խռովութեան առիթ եղև ընդ Լևոն և ընդ Տաճարական ասպետս, և նոքօք՝ ընդ գահուն Հռովմայ. այն է բերդն Կաստիմ կամ Կաստոն, ըստ այլ և այլ գրութեան 'ի լատինն, Gastim, Gaston, Gast, Guaston, քանզի ոչ յիշի 'ի հայումս։ Վիլլեպրանտ որ 'ի կողմանց Բերիոյ գայր 'ի Սիսուան, անցեալ ընդ Հարէնի բերդաւան՝ որ յարևելից հարաւոյ լճին Անտիոքայ, և դիմելով յԱղեքսանդրեակ կոյս, եկն 'ի Կաստիմ, և չորս մղոնաւ տարակաց ասէ յԱնտիոքէ, այլ մղոնքս ճահագոյն թուին գերմանական չափու[1]։ Իսկ զտեղին՝ ասէ՝ բերդ ամուր յոյժ, եռապարիսպ և բրգաւոր, 'ի սահմանածայր լերանց Հայոց, զորոց զելս և զմուտս երկրին պաշտպանէ, և է ընդ ձեռամբ թագաւորին Հայոց[2]. այլ Տաճարականքն վիճէին՝ իւրեանց ասելով զայն սեփական։ Ի Յունաց ասի շինեալ տեղիս այս ամուր յամի 1061, և 'ի գալ առաջին Խաչակրաց՝ նուաճեալ համարի 'ի Տանգրետեայ[3]. ապա ոչ գիտեմ որպէս օտարացեալ, յամի

1 Ոմանք չորեքօրեայ հեռի իմանան զասացեալ մղոնքդ։

2 Hoc est castrum quoddam fortissimum, tres habens muros circa se fortissimos et turritos, situm in extremis montibus Hermeniæ, illius terræ introitus et semitas diligenter observans, et possidetur a Rege illius terræ, scilicet a Rege Hermeniæ. — WILLEBRAND.

3 Այսպէս համարին մեկնել ոմանք զբան պատմչի վարուց արիականին այնորիկ Նորմանդացւոյ առաջնոյ. որ ասէ զնմանէ՝ ճանապարհ արարեալ ընդ դժուարին լերինս որ ընդ մէջ Աղեքսանդրեկի և Կաստոնի. Montes qui medij Alexandriolam Guastonumque oppidulam dirimunt, conscendit. — VITA TANCREDI, 144.

1142 (15 սեպտեմբեր) Յովհաննէս կայսր եկեալ բանակեցաւ աստ, և կոչեաց 'ի հնազանդութիւն զՌեմունդ Բրինձ Անտիոքայ. այլ 'ի հակառակել Անտիոքացւոց՝ աւերեալ զսահմանս նոցին և զվանսերն, 'ի բաց գնաց[1]: Յետ այսր Մլեհ հօրեղբայր Լեւոնի՝ յինքն գրաւեաց. և ապա կամ Հայք կամ Անտիոքացիք թողին յԱպետոն, յորոց կորզեաց[2] Սալահէտտին ընդ Պաղրասայ և Դարպասակայ: Ի մեկնել նորա՝ հաւանութեամբ Լեւոնի՝ Ֆուք կամ Ֆուլք համշիրակ նորին (Fouques de Buillon cosin germain)[3], կալաւ զտեղին՝ զոր լքեալ էին Սառակինոսք՝ լսելով զգալուստ Փրետրիկ կայսեր, և մնաց ընդ տէրութեամբ Լեւոնի զամս քսան. յորմէ խնդրելով ասպետացն Տաճարականաց՝ իբրև զհին կալուած իւրեանց, խոստանայր Լեւոն թողուլ 'ի նոսա՝ 'ի խաղաղել վիճիցն ընդ իշխանին Տրիպօլեայ՝ վասն ժառանգութեանն Անտիոքայ. և իբրև ոչ կարաց իրաւախոհ լինել, և զինու զօրութեամբ եմուտ յԱնտիոք, և զպատրիարքն կոչեաց իրաւարար, 'ի նմին պահու ասպետքն Տաճարականք՝ զորս համարէր Լեւոն երախտապարտս իւր, վասն ձեռն տալոյ նոցա յառնուլ զԴարպասակ, ընդդէմ դարձան նմա, հարին զզօրսն և կանգնեցին զդրօշս իւրեանց 'ի վերայ պարսպաց քաղաքին, և յօգնութիւն կարդացին զսուլտանն Հալպայ: Ընդ այս ծանրացաւ մանաւանդ եղեալ Լեւոնի՝ դարձաւ յետս, և յարձակեալ էառ զամենայն բերդս և զկալուածս ասպետացն այնոցիկ, և 'ի բաց հալածեաց զնոսա 'ի սահմանաց իւրոց: Ոչ կարացեալ նոցա զինու զօրութեամբ կռուել ընդ նմա՝ բողոք բարձին առ Քահանայապետն Հռովմայ, Իննովկենտ Գ, յորմէ ընկալեալ էր Լեւոնի զդրօշ Ս. Պետրոսի, և նա յորդորեաց զԼեւոն դարձուցանել առ նոսա զտեղիսն, իբրև նուիրական անձանց ժառանգութիւնս. խոստանայր Լեւոն տալ՝ եթէ 'ի բաց կացցեն նոքա 'ի նիզակակցութենէ Անտիոքացւոյն. և ոչ սեփական ինչ նոցա եղեալ մինչ՝ ասէր զտեղին, զի պատերազմական օրինօք կորուսեալ էր նոցա, և հօրեղբօր իւրոյ (Մլեհի) թափեալ յայլազգեաց: Յերկար և բազմադիմի եղեն վէճք և հակառակութիւնք, զորս չէ տեղւոյ յիշատակել, և որոց վասն ստէպ թղթակցութիւնք եղեն Լեւոնի ընդ գահուն Հռովմայ: Յընդունել Անտիոքացւոց զՌուբէն 'ի Բրինձ իւրեանց (1207), դարձոյց Լեւոն առ ասպետսն զկալուածսն. այլ յորժամ կոմսն Տրիպօլեայ բռնի կալաւ զԱնտիոք և Տաճարականք ձեռն եդին 'ի նա, միւսանգամ մերժեաց զնոսա Լեւոն. և զերկուց 'ի բերդից նոցին՝ զորս չկարաց նուաճել՝ այրեաց զարտորայս, և խոշտանգանօք հալածեաց որոց միանգամ ձեռնհասն եղև, մինչև ցամն 1213, յորում զիջեալ հաշտեալ ընդ նոսա, դարձոյց զբերդեանն. և մնացին 'ի ձեռս նոցա մինչև ցմեծ արշաւանն Պիպարսայ յամի 1268, որ եբարձ ընջեաց զամենայն իշխանութիւն Փռանկաց 'ի կողմանց աստի: Յետ ամաց ինչ (1272) Թաթարք ասպատակ սփռեցին 'ի սահմանս բերդիս, այլ ոչ յիշի և առումն 'ի նոցանէ: — Աղբիւր մի էր նշանաւոր առ Կաստիմայ, ուր՝ ասէ փռանկ պատմիչն՝ հրաւիրեալ Լեւոնի խաբէութեամբ զԲրինձն Անտիոքայ՝ 'ի ճաշ (1193), և տեսեալ զի բազմութեամբ պաշտօնէից եկն, տարեալ անտի 'ի բերդն, և կալեալ անդ զնոսա. իսկ մերս պատմիչ, որպէս տեսաք 'ի վերդ, 'ի Պաղրաս բերդի ասէ զայս եղեալ. այլ յայտ լինի և 'ի տարաձայնութենէն՝ մերձաւորութիւն երկոցուն բերդիցն: Ըստ նոր ուղևորի միոյ[4] բերդն Կաստիմ կայ 'ի գագաթան լերին յարևմտից Պէյլանայ, որ և նոյն համարի զայն ընդ բերդին Կոփրետոսի: Նոյն դարձեալ յիշելով առ երի Պէյլանայ՝ ընդ պտկաձև բլրաւ միով աղբիւր մի գեղեցիկ, բղխեալ 'ի միջոյ չիրմի միոյ՝ ընդ հովանեաւ հինաւուրց եղեւնեաց, և հոսեալ յաւազան մեծ չամբուտ և ձկնաշատ, և 'ի նմին զուարճագեղ վայրի ճաշեալ ընդ քաղաքատեսչին Պէյլանայ, ընծայէ ոչ սակաւ փաստս նմանութեան տեղւոյս ընդ նկարագրելոյն (Կաստիմայ) 'ի Խաչակրաց պատմչէն. փափագելի մնայ սակաւ ինչ ևս քննութեամբ անկասկած հաւաստել զայս:

Մի յամուր բերդորէից կողմանցս էր, և կոչեցեալն յԱրաբաց՝ Կինուկ? كينوك, Keinuk ըստ Եւրոպացւոց. առ մերայինս ոչ յիշի այսպիսի անուն, և թուի մերձ 'ի մի կապանաց Դրանց Ասորւոց. զի բերդացիքն Հայք՝ սովոր էին յարձակիլ 'ի վերայ կարաւանաց անցորդաց և կողոպտել զայլազգիս, և ոչ ինչ փոյթ լինէր, ասեն, Լեւոնի Բ, որ յայնժամ թագաւորէր. այն զի բազում անգամ Հայք զԹաթարաց ձև զգեցեալ՝ զայդ գործէին. վասն որոյ յամի 1273 ամիրայն Հալպայ առաքեաց զօրավար մի՝ Հիւսամէտտին Էլ-Այնթապի անուն, 'ի վերայ բերդին, և յերկար պաշարմամբ էառ յամսեան յուլիսի, և կործանեաց: Զայս տեղի ասեն չինեալ էր Համտոնեանն Սէյֆ-Էտտէօվլէ, և կոչէր ևս Էլ-հատար Էլ-հարիս[5]: — Դարձեալ ոչ հեռի 'ի կողմանցս համարելի է և քաղաք մի կոչեցեալ 'ի Խաչակրաց՝ Արտասիա կամ Արթեսիա անուն, Artasia, Arthesia, տասն մղոնաւ 'ի հիւսիսոյ Անտիոքայ, յաջմէ (յարևելից) Որոնդէս գետոյ. որոյ բնակիչք Հայք՝ ընկճեալք յայլազգեաց, 'ի մերձենալ առաջնոյ Խաչակրաց 'ի կողմանց Մարաշայ, կոտորեցին զհարստահարիչսն, և բացեալ զդրունս քաղաքին՝ մուծին 'ի ներքս զՔրիստոնեայ զօրականն:

160. Յայս ծովակողմն լերանցս նշանակէ նոր ուղևոր՝ հովիտ մի, Մէսձիտու? (Mesgidou) անուն, յորում պարտէզք են և ագարակք բնակչաց Պէյլանայ. միւս ևս՝ Պէկչիճիկ (Bekschidschik, գուցէ Պաղչէճիկ), երկու ժամաւ հեռի 'ի Պէյլանայ, վայր ջրարբի և ծառախիտ յոյժ և

1 Լը Պօ, Պատմութիւն Արևելեան կայսրութեան, ԺՁ. 54:

2 Si Sarrasin qui tenaient le Chastel de Gaston, que Saladin avait pris aprez la prise dou roiaume de Jerusalem, l'abandonnerent. Fouques de Buillon, cosin germain dou devant dit Livon, entendi que li Sarrasin avoient guerpi le devant dit Chastel, il entra dedens le Chastel et le saisi et le tint XX ans. — Eracles, XXIV, 23. XXXI, 6.

3 Այսպէս գրի 'ի հին պատմչէն Խաչակրաց, և ուղղագրելի է Bouillon. ըստ այսմ՝ թերևս տոհմակից է մեծին Կոփրետոսի ազատարարին Երուսաղեմի. յԱզգագրութեան ծովանցիկ Փռանկաց՝ ոչ յիշի, այլ ըստ վկայութեան պատմչիդ համշիրակ լինել Լեւոնի՝ հարկ է թէ իցէ որդի մօրաքեռ նորա, այն է դստեր Ստեփանեայ տեառն Պապեռոնի. թերևս ազգակից նորա է և կոչեցեալն Levonius de Biulum, մի 'ի պարոնայց Լեւոնի, յորոյ պարգևագրեն տուրքագրեալ յամի 1214, ընդ այլոց աւագաց:

4 Lortet, *La Syrie d'aujourd'hui*, etc.

5 Վայլ, Դ, 77: — Մագրիզի, Ա. Բ. 115:

ծաղկաւէտ. 'ի սոցունց յիշէ ծանօթ բուսաբանն, 'ի յետին այցելութեան իւրում (յամի 1862, յամսեան յունիսի) զՊատրինճ բարձրաբերձ (Melissa altissima), Նեպրոդ֊տժգոյն (Neprodium pallidum), *Սկուտղի սպիտակ (Scutellaria albida), Ակրկարհա կիլիկեան, Խոլընդատ գալիլեան, Տուղտ մատնեւոր (Althea digitata), Գոճամօրուս լիւդացի, Քոսքսուկ գլխապանծ (Scabiosa calocephala), Պատատուկ սակամոնեան (Convulvulus scammonea), *Խստի ճամուկ (Asperula stricta), *Բաժկի խաժուկ (Poterium glaucescens), և այլն, հանդերձ կաղամախեօք, կիպարեօք և նոցին նմանեօք։ — Երկու ժամու հեռի է աստի Զաղալ գեօղ. և անդրագոյն՝ Ցարի–տէրէ ձորահովիտ, յորում՝ յ'3000' բարձու՝ Եափրագլըգ գիւղ փոքր կամ հանգրուան, և առ նովաւ աւերակք մեծի ագուգայի և այլոց ինչ շինուածոց։

Ցարեւմտեան դիմաց աստի հարաւային պարու Ամանոսեան լերանց գաւառիս, (զոր պէսպէս անուամբ կոչեն նոր աշխարհագիրք և աշխարհացոյցք՝ անմիաբանք, որպէս և 'ի վերդ յիշեցաք, ոմանք Մուսա, այլք Գըզըլ, այլք Քեսերիկ կամ Էչմա), բղխեն ոչ սակաւ գետակք և թափին 'ի ծով. 'ի ձորահովիտս նոցին՝ մանաւանդ 'ի ստորեւ 'ի ծովեզերս՝ նշանակին գեօղք, յորոց անուանս նոյնպէս անմիաբանք գտանին նշանակողք, և մեք երկրայօրէն գրեցուք, ապագայից թողեալ զհաւաստելն։ Առաջին՝ և որպէս թուի հզօրագոյն 'ի գետակս՝ է հիւսիսագոյնն, որ է Պէյլանայ ջուրն, յորոյ հովտի մղոնօք ինչ հեռի 'ի Հս. Եւ. քաղաքաւանին՝ նշանակի նախայիշեալն Սագու, յոմանց Սագուտ, յայլոց Սագուցպ գրեալ. յարեւմտից նորին առ գետեզերն՝ Գըչլա. 'ի ստորեւ՝ մերձ 'ի ծովեզրն՝ Գարագաչ. 'ի ձախմէ ջրոյն ('ի հարաւոյ) Գաչմուր, առ ծովեզերբն՝ Պէօյիւք–տէրէ. և ևս 'ի հարաւոյ, թերեւս և յայլում ձորահովտի՝ Գարա–գուշլու, Արապ–թարաղ?, Շուեկ։ — Առ միւսով գետակաւ և առ բերանով նորին՝ Քեսրիկ՝ անուանակիր լերանցն, որ թուի նոյն ընդ Քիսլի գրելում յայլ քարտէսս. առ նովաւ և Աքպար գիւղ, եթէ այսպէս կոչի ստուգիւ և ոչ Ագպաշ կամ Ագպաս, զի յիշի և յայս անուն



199. Ռասխանճըր հրուանդան եւ Աղեքսանդրեակ.

տեղի մերձ յԱղեքսանդրեակ, 'ի ստորոտս լերանց. ուր 'ի հերուն (1882) ընկերութիւն մի փռանկաց գնեաց ընդարձակ գետին, և կամէր բերել 60 անապատաւորս Տրապպեանս (Trappistes) 'ի հողագործութիւն։ — Այս նշանակեն երկու ևս ձորագետակք մերձակիցք. առ բերանով հարաւայնոյն՝ կայ անուանատու բովանդակ գաւառիս՝ Արսուս, ըստ այժմեայցս՝ գեօղ, և ըստ նախնեաց՝ Հռոսոս, 'Ρῶσος, 'Ρόσσος, Rhosus, և 'ի միջին դարս Arsus. զոր հին երկրաչափութիւնն իննսուն ասպարէզ 'ի հարաւոյ Միւրիանդոսի դնէ և ութսուն 'ի հիւսիսոյ Հռոսիկեան հրուանդանին. և ըստ այսմ 'ի դէպ գայ զՄիւրիանդոսդ սակաւուք 'ի հարաւոյ գետաբերանոյն Պէյլանոյ ասել, և հաւանել ըստ նախագրելոցս՝ անդ լինել և զմերոց թագաւորաց նաւահանգիստն Պոնել։ Հռոսոս աթոռ էր եպիսկոպոսի 'ի նահանգի Անազարբայ։ Սակաւ ինչ հեռի 'ի ծովային գեղջէն, յորում երեւի մզկիթ կամ չիրիմ մի սպիտակ, յարեւելս կոյս՝ է տեղի հին բերդին, Արսուզ գալեսի կոչեցեալ և յայժմուս, ուր են և աւերակք, այլ որպիսիք՝ ոչ գիտեմ։ Յիշեցաք 'ի վեր անդր զվկայութիւն արքունի փիլասանի մերոյ Վահրամայ և զայլոց՝ վասն տիրելոյ Լեւոնի բերդիս այսմիկ, որով և գաւառին. բայց էր և սա տուեալ Տաճարականաց, զոր և ունէին մինչեւ 'ի բազում անգամ յիշեալ արշաւանս Պիպարսայ, յամի 1268, յորում և զսա և զԿաստոն և զնաւահանգիստն Պոնել՝ լքեալ թողին, որպէս աւանդէ շարայարող Պատմութեան Գուլ. Տիւրացւոյ [1]։ Ոմանք 'ի

1 Li Templiers abandonnerent lor chastiaus II, *Gaston* et *Roche de Rusol,* et la terre de Port Bounel à l'entrée d'Erminie. — Eracles.

հարաւոյ Արսուսի գնեն զԲէյարիկն գեօղ, զոր սակաւուք 'ի վերոյ յիշեցաք, և այլք աստանօր այլ գեօղ Ալհօփ?, Alhope, անուն: — Առ հարաւագոյն գետակաւն Գուշլուչայ՝ են գեօղն Համմնուն, և Միրասաշ, և 'ի ծովեզերս՝ Գարաչըլ և Պուռունըրու. յետինս՝ չորս մղոնաւ 'ի հարաւոյ Հռոսոսի՝ թուի վասն 'ի ծովն կարկառելոյ այսպէս կոչեցեալ. բայց ոմանց՝ թերևս և 'ի ձայնէն հրապուրեալ՝ թուեցաւ աստանօր լինել բազում անգամ յիշեալ Նաւահանգստին Պոնել, որ կոչէրն և Պռայոնեկ. քանզի և երևելին իսկ անդանօր նշմարք նաւահանգստի, եկեղեցի մի աւերակ, և դերբուկք՝ յորս բազում կտորք ապակիք:

Առատուստ երկու կամ երեք փարսախաւ ընդ հարաւոյ՝ կայ բարձրակարկառ Հռոսիկեան հրուանդան կամ ժայռ (Σκόπελος, Scopulus Rhossicus), Ռաս-էլ-խանզիր ըստ Արաբաց, Raxacamzir գրեալ 'ի ծովացոյց քարտս միջին դարուց, Ռաս-խանձիր յեղեալ 'ի մեզ. որ նշանակէ Գլուխ խոզի, (La Hure de Sanglier ըստ փռանկաց), այնպէս իմն ձևակերպեալ տեղւոյն յաջս նոցին, որոց կալեալ էր և զվիճակ նորին՝ յառաջին դարս խաչակրութեան, մինչև յամի 964 Նիկեփոր կայսր հալածեաց անտի, և յամենայն ոլորտից Ծոցոյն Հայոց: Գագաթն լերինն բարձր է յերեսաց ծովուն իբրև 1656 Զ. հրաշագիտակ իմն աւարտ Ամանոսեան լերանց պարու, միանգամայն և սահմանաց Կիլիկիոյ և մերոյ Սիսուանայ: — Գեօղ մի միայն ծանօթ է 'ի կողս լերինն, Պեղիաս անուն, ուր շինեաց իւր ամարանոց Պըրքարդ Պարքըր (William Burkhardt Barker) անգղիացի, սան մեծի համանուն ճանապարհորդին, և զամս յիսուն բնակեցաւ 'ի կողմանքս Կիլիկիոյ և Ասորւոց, հաստատեալ զտուն իւր 'ի Սիւէտիա կամ Սիւվէյտիա՝ 'ի ծովափունս Անտիոքայ, Սելևտի կոչեցեալ 'ի մերոց պատմչաց, և Σουέτιον կամ Σουδεί 'ի Յունաց[1], ուր և մեռաւ ութսնամեայ յամի 1850. յերկար բնակութեամբ ոչ միայն ծանօթ էր ամենայն ազգաց կողմանցն և օժանդակ 'ի պէտս նոցին, և



200. Պեղիաս, և տուն Պարքըր Պըրքարդի.

ասպնջական արևմտեան եկաց, այլ և բազում խնամով պարապեալ 'ի մշակութիւն, 'ի զանազան աշխարհաց բերելով օտար բոյս և ծառս պիտանիս, դարմանէր և աճեցուցանէր 'ի կալուածս իւր և 'ի սահմանս նոցին[2]:

Ոչ վայրապար պարծանաց և զբօսանաց ևեթ հանդիսարան ընծայեցան սարք Հռոսոսի. այլ հանգոյնք հիւսիսագոյն լերանցն՝ և յանքոյթ կողս սոցին հաստատեալ կային որբավայրք բնակութեանց, անդստին 'ի սկզբանց

1 Յայս սահման, ըստ պատմչաց մերոց եկն Մէլիք-շահ աշխարհակալ, յամի 1086. «Եւ յետ տիրելոյն Անտիոքայ՝ եկն 'ի Սևտոփէն, » յեզր ծովուն Ովկիանոսի. և մտեալ երիվարաւն 'ի ներս՝ կոխէր » զծովն. և հանէր զսուրն, հարկանէր երիցս զջուրն. և ապա իջեալ 'ի վերայ երկրի՝ աղօթս և գոհութիւնս մատուցանէր Աս» տուծոյ, որ առաւել զօրացոյց զնա՝ քան զհայր իւր, և ետ նմա 'ի » ծովէն Պարսից՝ մինչև 'ի ծովն Ովկիանոս»: Ի միջին դարս տեղիս այս կոչէր և Նաւահանգիստ Ս. Սիմէոնի:

2 Սա և հմուտ հնագիտակ գոլով՝ հաւաքեաց 'ի սահմանս Տարսոնի յոլով անօթս, անդրիս, քանդակս, և խեցեղէնս կամ բըրտեայս հեթանոսական ժամանակաց. զորոց զնկարագիր հանդերձ ստորագրութեամբ Կիլիկիոյ և պատմութեամբ հին և նոր անցից երկրին՝ խմբագրեաց. յետ մահուան նորա հրատարակեաց զգործն համազգի նորին նշանաւոր ուղևորն Էնզուըրթհ (Will. Francis Ainsworth) յամի 1853, և կոչի մատեանն ԹԵՐԱՓՔ, կամ ԿԻԼԻԿԻԱ ԵՒ ՎԱՐԻՉՔ ԻՒՐ. *Lares and Penates, Cilicia and its Governors*. յայսմ մատենէ օգտեցաք և մեք, մանաւանդ 'ի պատկերացն ինչ, յորոց սակի է և քանդակդ որ 'ի հանդիպոյ՝ յաւարտ տեղագրութեանս:

միանձնական կենաց. քանզի յառաջին կէս Ե դարու հռչակեալ էր աստ Ս. Թէոդոս ոմն խստակրօն ճգնաւոր, անուանեալ Գիւաւոր, զի ոչ փոքրելով հերացն աճեցեալ յերկիր քարշէին, և ժողովեալ զմիջամն ածէր. անուրս երկաթիս արկեալ 'ի պարանոցն, 'ի ձեռս և 'ի մէջս, գործէր կողոպս և զամբիւղս, և մշակէր ածու ինչ փոքրիկ. առ որ ձգեալ 'ի համբաւոյն՝ աշակերտեցան բազումք և հաստատեցին վանս, զնոյն օրինակ կեցով 'ի վաստակոց ձեռաց իւրեանց. յոր սակս և Նաւակ մի հայթհայթեալ առ ստորոտով լերինն՝ տանէին զվաճառսն 'ի ծովեզերս Ծոցոյն։ Խնայեցին 'ի Նոսա և անխնայ յելուզակքն Իսաւրիոյ (յամի 441), չատացեալք առնուլ զկամաւոր տուրսն. բայց եպխկոպոսաց կողմանցն երկուցեալ՝ թէ ժանտագոյնք ոմանք ագահեսցեն յետոյ և 'ի սպառ անզթասցին, սոփեցին իջուցին զծերն յերկնադխտակ կայանիցն, և բերին յԱնտիոք, ուր և հանգեաւ 'ի Տէր։ Արկլին ծաղկեցան մենաստանքն և 'ի տիրել Խաչակրաց՝ կողմանցս այսոցիկ. ուրանոր՝ քսան ամաւ յառաջ քան զթագընկալութիւն մերոյս Լեւոնի, (1179), եկեալ աւագագոյն և պայծառագոյն ակն երկրին՝ լուսափայլն Լամբրոնեցի, պարսյածիկ բրգքն՝ յետ բնութեան՝ զգերաքուն բարեաց խնդրական քննելով, գրէր. « Ոսումնասիրութեան և բարեկարգութեան տենչանօք չրջելով 'ի վանորայսն որք առընթեր մեծի քաղաքին Անտիոքայ, 'ի լեառն՝ որ Ռասխանձիր կոչի, յափն ծովուն, հիանայի 'ի տեսանելն զառաքինազարդ միայնութիւնն և զճգնութիւն հառոմայեցի միաբանակեցաց վանորէիցն, որ այժմ կոչին Փռանգք. և իբրև ընդ անընդել իրս սխրացեալ, հարցի ընդ ոմն իմաստուն կրօնաւոր որ 'ի Ցունաց՝ Բասիլ անուն. Ուստի՞ սոցա այսքան ուղղութեան կարգաց շնորհ, որով գերազանց գտանին այսօր ձեզ և մեզ։ Պատասխանեաց. Ի Բենեդիքտոսէ երանեալ հօրէն, զորոյ զվարսն պատմէ Սուրբն Գրիգոր Պապն ». և այլն. և աստի յորդորեալ խնդրեաց և եգիտ յետոյ զգեղեցիկ զայն գիրս Մեծի Քահանայապետին, որպէս

պա և զկարգ և զկանոնս գերագոյն սրբոյն Բենեդիկտոսի, և զերկոսին ևս եդեղ 'ի մերս բարբառ։ Ցայլում Նուագի՝ 'ի Նմին ամի՝ գրախնդիրն անյագ եգիտ և զմիւս ևս փափագելին իւր՝ մատեան Մեկնութեան Ցայտնութեան Ցովհաննու, յայլ ինչ վանս կողմանցս, զորոյ անուն կրէ վերջինն առ 'ի մէնջ յիշեալ գիւղ. և այսպէս պատմէ ինքնին. « Ելեալ արտաքոյ քաղաքին (Անտիոքայ), 'ի Սուրբ Լեառն, որ է հիւսիսոյ կողմ անդր, 'ի մի 'ի վանորէիցն Հոռոմոց, որում անուն էր Պէծիաս, առ ոմն արգելական միայնակեաց՝ որոյ անուն Բասիլ. քննեալ՝ գտի զցանկալին 'ի հելլենացի բարբառ և 'ի գիր, ուղղաբան և վայելուչ, որ լիեալ էր Աթանասի պատրիարգի Նորին քաղաքի. և խնդրեալ աղաչանօք 'ի բարէմիտ առնէն՝ առեալ փութացայ գրովքն 'ի հայրապետական աթոռն, առ Տէրն իմ և կաթողիկոսն սուրբ՝ Գրիգորիոս », (Տղայն), և այլն։ — Քանիօն խորամուխ տեսութեամբք՝ 'ի բարձրաղիտակ Հռոսիկեան սարից աստի՝ սփռէին աչք և սիրտ այնքանոյ Ներանձնական ոգւոյ, ե՛ւ ընդ արևմուտս՝ « յՈվկիանոս ծով գեղեցիկ », ըստ հոգերգող հաւուն իւրոյ, եւ յանպարունակն զմբեթաձև՝ ասպարէզ յուսոյ, ե՛ւ 'ի հոկայաձև կուռ զհետ իրերաց մակադրեալ կարկառս Տաւրոսի ընդ հիւսիս, եւ ընդ ցածուցեալ հարթայատակ դաշտս Ասորւոց՝ ընդ արևելս հարաւոյ. և որպիսեա՞ք թաթաւեալ աստուածազեղ իմացմամբք՝ իջանէր 'ի մտաբացիկ աղօթիցն դիտանոցէ, որ ընդ հուպ սահմանածայր էր լինելոց բազմայեղանակ տէրութեան տոհմին իւրոյ, 'ի ձեռն չև ևս իշխանացելոյն յայնժամ եռանդուն երիտասարդին՝ և իւրոյ մերձաւորին՝ Լեւոնի. որ՝ զոյգ կչիռ հարիւր ամաւ յետ աշխարհակալին Մէլիք-շահի՝ յայս 'ի սոյն ծովափունս յաղթողաբար ձիաւորեալ, արժանընդունակ ևս աղօթիւք կարէր զոհանալ զԱստուծոյ, զի զօրացոյց զինքն առաւել քան զհարս իւր, և զամփոփեալ և զպատառեալ լար իշխանութեանն Հայոց՝ պարզեալ ընդարձակեաց հասոյց 'ի Ծոցոյն Պամփիւլիոյ մինչև 'ի ծովեզերքս յայս Սեւատին։



201. Իռիս = Խաղաղութիւն.

Քանդակ բրոնզի, գտեալ 'ի Կիլիկիա.




Venise, Etab. Kirchmayr & Scozzi



ԿՕ Λ ՐՕ ԽԹա ԳաՈՐՀ պ ՑՎ



ատեալ յաւարտ Տեղագրու-
թեանս Սիսուանայ՝ յիշա-
տակաւ զուգիցս այսոցիկ
արանց, Լեւոնի Ա Թագա-
ւորի և Ներսիսի Լամբրու-
նեցւոյ, վեհագոյն հանդի-
սացելոց 'ի յետնում յայսմ
մարզի ինքնիշխանութեան
Հայոց, քանզի հատուցի
կանխաւ դոյզն ինչ աղերս
երախտեաց՝ առ հոգեւորն տէր, թուիմ անհրաժեշտ պա-
հանջիլ յընթերցանելեաց, ըստ պատշաճի քաղաքական
գործոյն՝ նուիրել դրուագս ինչ բանից՝ և առ աշխարհա-
կանն տէր, առ պանծալի պսակաւորն Լեւոն. զորոյ հարկ
եղև զանուն և զգործս՝ վեր 'ի վայր յիշատակել գրեաթէ
յամենայն կողմանս երկրին, արժանաւորապէս յանուն
իւր Նորին՝ քան 'ի Նախնեացն՝ կոչեցելոյ և կոչելոյ Լեւո-
նի երկիր։ Անուն, որ է ասել անձն, զոր՝ եթէ չիցէ յան-
դըգնութիւն չքնաղագոյն 'ի Հայկազնեայս ասել՝ ըստ քա-
ղաքական տեսութեան, յանդգնագոյն թերևս իցէ եր-
կրորդ ումեք 'ի մերայոցս դասել. անձն՝ ընդ որում՝ ոչ լոկ
յիւրումն յայնմ Ռուբինեան հարստութեան, կամ՝ 'ի հնա-
գոյնսն ևս յազգայինս՝ գործ է գտանել մրցողս զուգա-
փառս, այլ և յօտար ազինս, յորոց՝ և 'ի միջի վեհիցն ժա-
մանակակցաց՝ պանծագոյնս փայլէ. զի ոչ ոք թերևս առ-
նովաւ՝ այնքան արդիւնական և իրագործ երևեցաւ յազգի
իւրում՝ որքան Լեւոն 'ի մերայումս. եթէ այլքն քաջու-
թեամբ ինչ և ճարտարութեամբ յանձանձեցին զտէրու-
թիւն իւրեանց, ճարտարագոյն և արիագոյն ևս գտաւ
սա՝ 'ի կայկայել և յընդարձակել զերկրայ և զդեղեւեալ
պետութիւն հարց իւրոց և զազգ, մանաւանդ թէ զփոքր
մի մասն ազգի. և զազգապետն՝ չեռեակաւ ոմն ծանու-
ցեալ, այնքան պատկառելի և վեհաշուք յարդարեաց,
մինչև շարժել մեծագոյն աշխարհատերց ժամանակին,
ելևելս իմն զմիմեամբք առնելով, 'ի թագընծայութիւն
նմին, զաշամբք և դրօշուք, կրօնիւք և խնամութեամբք՝
կապիլ ընդ նմա և ընդ ժողովրդեան Նորուն։ Միանգա-
մայն ասացից, եզակի սա 'ի մերայոցս ճանաչի յաչս օտա-
րաց և գիտնոց քննչաց՝ այր մեծ և գերահանճար, յամե-
նեցուն գովեալ, ամենեցուն զարմանալի. որում՝ ոչ եթէ
չածէ ինչ սաստկուած փոքրկութիւն տարածութեան եր-
կրին իշխեցելոյ, այլ և մեծագոյն յայնմ փոքրկութեան
երևի՝ քան մեծամեծքն այն ժամու ազգաց և աշխարհաց
վարիչք. այն զի ինքնին ոչ սակաւ անդրավարեաց զսահ-

մանս հայրենի ժառանգութեանն. մինչև, ըստ գրելոյ եւրոպացւոյ ուրումն՝ յապարանս Նորին հիւրամեծարելոյ, ընդ վեչտասան աւուրց գնացս ճանապարհի ձգէր երկայնութիւն երկրի Նորա, և ըստ մերայոյ ուրումն գրողի՝ ընդ ամսօրեայ ճանապարհ տարածանէր ահ Նորուն. իսկ համբաւ՝ բացագնաց ևս անդրաքայլեալ՝ Նախանձելի առնէր զնա և հեռաւորաց ազգայնոց, յօժարաբար անուանելով զնա իրր հասարակաց Հայոց Թագաւոր. որպէս զի՝ դիպողագոյն արդեօք պատչաճիցի սմա ասացուած Խորենացւոյ պատմահօր՝ որ զՏիգրանայ Ա. եթէ «Արանց կացեալ գլուխ և արութիւն ցուցեալ, զազգս » մեր բարձրացոյց, և զընդ լծով կացեալսն՝ լծադիրս և » հարկապահանջս բազմաց կացոյց». և զոր՝ ցայնժամ ընդ առիական ազանց ևեթ Թանձունց և խափարականաց՝ ստիպեալ էր ունել գործ, Նրբագունիցն եւրոպէացւոց կերպագրեալ հաւասարեաց՝ փոքր 'ի չատէ, 'ի ձևս, 'ի հրահանգս, 'ի սովորոյթ և յօրէնս. փոխանակ բռնադատ արարացւոյն և Նմանոյն՝ զփարելի բարբառ փռանկին և զընտելական լատինն եմոյծ 'ի դարպաս իւր և 'ի դիւանս. և փոխանակ գոռոզ պահանջմանց յունական եկեղեցւոյ՝ յիրաւափառն հռովմէական պատուաստեաց զՀայաստանեայցս՝ լծակցիռ հաւանութեամբ: Քան ըզչնորհեալն բազմաց՝ արութիւն քաջութեան, վեհագոյն ցուցաւ 'ի Լեւոն սակաւուցն պարգևեալ հանճար՝ խորամուխ և երկայնամիտ, ամենայն աջողութեանց Նորին պատճառ. ոչ պակաս 'ի զօրութենէ բազկին՝ զարտին ունելով պնդութիւն. ոչ ընդհատ 'ի ճոխասէր բարուցն՝ և առատութիւն 'ի տուրս. ոչ երագագոյն յ'ընդ ձեռամբ արկանել զայլս՝ քան 'ի ձեռնտու լինել այլոց. ոչ Նուազ Նկրտեալ յ'ամբառնալ գլուխ ազատ 'ի միջի Նմանեաց իւրոց, քան 'ի խոնարհել զայն առաջի գերագունի գլխոյ. ոչ առաւել ժրագոյն յ'ամրացուցանել զերկիր իւր բերդօրէիւք, պարսպօք և պահակօք, քան 'ի բարգաւաճել եկեղեցեօք և վարժարանօք. և ոչ այնքան խնամով պսակեալ զգագաթն լերին Սսոյ՝ անվկանդ կլայիւն, որքան գեղազան պարտիզօք և բուրաստանօք պճնեալ զստորոտս Նորին. Թէպէտ և ամենայն ջանիւ մտադիր՝ 'ի չինել, 'ի հաստատել, 'ի զարդարել զվիճակ իւր, զարևմտագոյն զայն բաժին Հայոց, այլ ոչ անտեսող և արևելեայ մեծի և բնիկ տանն Թորգոմայ, ըստ ինչ ինչ պիտոյից Նորին և ըստ իւրոյ ձեռին բաւականի, 'ի պահանջել հարկին:

Քաջ 'ի քնին առեալ զբազմազան բարեմասնութիւնս Լեւոնի, և մանաւանդ զնրբատեսութիւն հետամուտ մըտացն և զազգաչահ աւագասիրութեանն, ոչ զոք մերձաւոր Նմա 'ի մերոցս Նախնեաց գտանեմ, բայց 'ի Նահապետէ Թագաւորացն Վասպուրականի՝ 'ի Գագկայ. այլ ոչ անբասիր սա, մանաւանդ թէ յոյժ եպերելի վասն աղխտաբեր անջատմանն 'ի քեռւոյն իւրմէ՝ Սմբատայ Բագրատունւոյ Թագաւորէ, քակտման մանաւանդ քան չինութեան ընդհանուր աչխարհիս Հայոց առիթ եղելոյ: Վասն որոյ ոչ միայն գերագունից արժանաւոր վարկանիմ դրուատեաց և քննաբանութեանց՝ զվեհագոյն տերանց Կիլիկիոյ և զպարծանս Սիսուանայ՝ զՄեծն, Նա մանաւանդ Մեծագործ Լեւոն, այլ յաւէտ զարմանամ եթէ զիարդ յառաջնոցն մերոց ոչ հատուցաւ Նմա՝ այս պարտք պատչաճից. բայց կարծեմ՝ թէ գտան գովիչք գովանւոյն, այլ ժամանակն, և որ ինչ չար քան զժամանակն՝ կապտեաց և ոչ հասոյց մեզ զգովսն և զվէպս: Բայց և այս ոչ փոքր ստգիւտ է մեզ, զի յօտարաց արդ առաւել կչռադատեալ վերապատուի Լեւոն՝ քան 'ի հոմասեռիցն. մինչև միոյ ուրումն 'ի Նոցանէ (Գերմանացւոյ) առ մեօք՝ կայրդական բանի Նիւթ ընտրելով զառաջին գործս Լեւոնի մինչև 'ի թագաւորութիւնն, զարմանալով մեղադրէ զայն ժամու Նուիրակ Քահանայապետին Հռովմայ, որոյ եկեալ (յամի 1197) կարգել զոք Թագաւոր Երուսաղեմի, զանց արար գալ Նախ առ Լեւոն, որպէս առեալ էր պատուէր, ունելով Թագ և վասն Նորա. զի եթէ տեսեալ էր, ասէ, զայսպիսի այր հզօր և զգօն, ընդ հայկականին և զԵրուսաղեմի Թագն Նմա ընծայէր, և այլազգ լինէր այնուհետև բաղդ արևմտեայցն՝ յերկրին Ասորւոց: Կացցի զայս որպէս և ախորժէ ոք. բայց մեզ լիցի յորդոր 'ի յարգ և 'ի վարկ վեհիցս մերայոց, և 'ի հետաքննութիւն գործոց Նոցին ընդ օտարացն զուգակչռելով: Այլ մինչ չև մխեալ իմ յայս՝ ազդ առնեմ հայրենասիրաց, զի պատմագրել կամիմ և ոչ վիպասանել. չեն իմ կամք ստեղծանել զոմն Լեւոն ըստ քեննոփոնեանն փիլիսոփայութեան 'ի Կիւրոս, այլ ըստ Յիացորդաց յիչատակաց և դիւանաց՝ ցուցանել զազգակեցոյցս մեր Ռուբինեան Լեւոն, համօրէն մեծութեամբն և թերութեամբն ինչ, որպէս լուսաւոր ոչ խապառ անստուեր. բայց կամիմ և 'ի համանմանեացն բարձակցաց միջի հանդիսացուցանել զնա, զի քաջայայտ լիցի իւրաքանչիւր չափ, և մի վայրապար կարծիցիմ մերումս ընծայել առաւելութիւն, յորժամ երևիցի վեհ 'ի միջի վեհից:

# ԴՐՈՒԱԳ Ա.

*Ա. Ժամանակ կենաց Լեւոնի եւ որ ինչ յառաջ քան զպայազատելն. — Բ. Պայազատութիւն Լեւոնի. — Գ. Խնամութիւնք. — Դ. Առաջին պատերազմունք եւ երկրակալութիւնք. Ասպատակութիւն եւ սպանումն Ռուստոմայ. — Ե. Իկոնիոնի Սուլտանք եւ Լեւոն. Առումն Պռականայ եւ Լուլուայ. — Զ. Արշաւանք Սալահէտտինի 'ի սահմանս Անտիոքայ, եւ Լեւոնի նուաճել զնոսին։*

Ա. Լեւոն՝ որ 'ի կարգի համանուն պայազատաց Ռուբինեանց՝ Երկրորդ է, և 'ի Թագաւորս՝ Առաջին, սերընդեամբ՝ հինգերորդ ազգ է 'ի տոհմապետէն Ռուբինէ, յորմէ աւելի քան զդար մի ժամանակի անցեալ էր մինչև յիւրն պայազատութիւն (1080-1187)։ Տեսաք 'ի Դըրուագի Նուաճմանն Կիլիկիոյ 'ի Նախորդաց սորին՝ քանի՛ երկբայ և զաղփաղփուն էր բաղդ նոցին, թէպէտ և արանց հզօրաց և մահուչափ ճգնողաց, 'ի մէջ մեծամեծ և օխերիմ պետութեանց, կայսերացն ասեմ Յունաց, սուլտանաց և ամիրայից Թուրքաց, և եկամուտ փառասէր Փռանկաց. և թէ քանի՜ցս վտանգեալ իբրև 'ի մազկռինչ հասանէր Նորատունկ տաւրոսական տունն Հայոց, մանաւանդ յաւուրս հաւուն իւրոյ հոմանուան, և հօրեղբօրն (Թորոսի Բ), և իւրոյ իսկ հօրն՝ դժնդակ ջրախարշ-գրաւելոյ 'ի կենաց, ապա և ակներև եղբօր իւրոյ Ռուբինի Բ, ընդ ձեռամբ և գերի անկելոյ Բրնձին Անտիոքայ. որ է ասել, եթէ գրեա թէ ամենեքին նոքա՝ կամ իբրև ապստամբք կասկածանօք կային յամուր ապաստանս լերանց, հանապազ զէն 'ի ձեռին պաշտպանելով անձանց և տանց, կամ յանձնառութեամբ գերագոյն իշխանութեան հզօրագունից տէրանց՝ իբրև ճորտք նոցին կամ լիճք՝ ըստ այնր ժամանակի խօսից։ Սովին օրինօք և ինքն Լեւոն արար զմուտն յիշխանութիւն, զոր յետոյ քաջօրէն տիրաբար բարձրացոյց, թօթափելով զխէթն և զլուծ՝ զՅունաց և զՓռանկաց. խորագէտ տեսութեամբ ընծայեալ զինքն և զերկիր իւր՝ 'ի ստուերակերպ լծութիւն հեռաւորի կայսեր Գերմանիոյ և յորդեգրութիւն Քահանայապետին Հռովմայ, այլ իսկապէս ինքնագլուխ կալով և բացարձակ անուանելով Թագաւոր Հայոց. զոր և ժառանգեցոյց յաջորդաց իւրոց, միայն Շնորհօքն Աստուծոյ այնպէս կոչիլ, և ոչ ևս Հռովմայեցւոց ինքնակալին՛ որպէս գրէր ինքն յառաջին ամս Թագաւորութեանն։

Որպէս 'ի սկզբանն ազգաբանութեան Ռուբինեանց ցուցաւ, Լեւոն կրսեր որդի է Ստեփանեայ, որդւոյ Լեւոնի, որդւոյ Կոստանդեայ, որդւոյ Ռուբինի, և եկեաց ամս յիսուն և հինգ՝ յետ տարաժամ կենազրաւ լինելոյ հօր իւրոյ. իսկ ընդ բնաւ՝ ոչ է յայտ որքան, բայց վկայի 'ի ծերութիւն հասեալ, և 'ի դէպ է համարել մերձ յեօթանասուն ամ. մանաւանդ եթէ ընդունիցիմք, ըստ արքունի պատմչին, երեսնամեայ լինել եղբօր նորին անդրանկան՝ 'ի պայազատելն յամի 1175. որով հարկ է, զհայր նոցա Ստեփանէ համարել ամուսնացեալ (ընդ Ռիթայ՝ դստեր Սմբատայ տեառն Պապեռօնի) յառաջ քան զգերութիւնն 'ի Յովհաննէ կայսերէ, և վաղագոյն քան զեղբայր իւր Թորոս խոյս տուեալ եկեալ 'ի հայրենիս, կամ բնաւ իսկ ոչ գնացեալ 'ի գերութիւն ընդ հօրն և ընդ երկոցուն եղբարցն։ Ապա զկիսով ԺԲ դարու ընծայեալ է Լեւոն 'ի լոյս, 'ի սկզբան քաջափայլ պայազատութեան հօրեղբօր իւրոյ Թորոսի Բ, և յաւուրս հայրապետութեան Բ Վկայասիրին Գրիգորի՝ եղբօր Ս. Ներսիսի Շնորհալւոյ։ Թէպէտ և եղբօրորդի սոցա և յաջորդ՝ Գրիգոր Տղայ՝ 'ի փիլիսոփայական Ողբս Երուսաղեմի՝ 'ի յիշել զառաջին յաղթութիւնս Լեւոնի, յայն ինչ պայազատելն՝ մանուկ կոչէ զնա.

« Լեւոն իշխան Կիլիկէին՝
Մանուկ տիովք, բնութեամբ բարին ».

բայց բազում ուրեք գտանեմք առ Նախնիս մեր մանուկս կոչել և զերիտասարդս հասունս տիօք, մանաւանդ զքաջս և զկորովիս։

Զիք ամենևին յիշատակ գործոց մանկական կամ առաջին տիոց նորա. բայց որչափ է իմաստասիրել 'ի քաղաքական բազմայեղանակ դիպաց ժամանակին, և 'ի բարուց հօր իւրոյ Ստեփանեայ, որ միջակ իմն էր արիական զգօնութեան երիցու եղբօրն Թորոսի և ստահակութեան կրսերոյն՝ Մլեհի, զերեցուն ևս զոցա յորաշարժ չհաստատակութիւնս առաջի աչաց ունելով, հարկ է համարել և զԼեւոն 'ի նոյնս ախորժեալ և ընտելացեալ անդստին 'ի տղայութենէ. և ըստ անուանն՝ զառիւծական ժառանգեալ ոգի հարցն և զտոհմին, զոր և 'ի բովանդակ գործս իւր է նշմարել։ Այլ յեռանդն արեանն խառնեալ էր և հեզութիւն մայրենի զարմին՝ ազնուա-

բարոյիցն Հեթմեան բամբչանց. որպէս և առանձինն իսկ վկայեալ է վասն մօր իւրոյ՝ Ռիթայ, համշիրակի Սրբոյ Լամբրոնեցւոյն, եթէ էր «բարեպաշտօն և իմաստուն »կինն այն, և երկեղած 'ի Տեառնէ». որ և յետ դըժպըհի մահուան առն իւրոյ Ստեփաննեայ՝ (յամի 1165), «առեալ զորդեակս իւր գնաց 'ի Պապեռօնն՝ առ եղ»բայրն իւր Բակուրան, և անդ նստեալ սնուցանէր զնո»սա»: Թէպէտ և հայր իւր Սմբատ՝ սպանեալ էր 'ի մարտի մղելոյ 'ի Յունաց ընդդէմ Թորոսի (առ Մսսաւ), այլ Բակուրան հաշտեալ երևի ընդ սմա. զէթ անյիշաչարութեամբ ընկալաւ զեղբօրորդիսն, և զմայր նոցին ըզքոյր իւր, և հայրաբար խնամէր, հանդերձ բարեչուք չառաւիղօք եղբօր իւրոյ Օշնի՝ տեառն Լամբրունի. ամօքելով ըստ կարի զընածին բորբոք բարուց կորեանցն Ռուբինեանց: Երևի և 'ի Ռիթա՝ դշխոյական, կամ թէ օրէն իցէ ասել՝ թագաւորամայրական իմն հեղինակութիւն՝ 'ի վերայ այնպիսւոյ մտահարուստ որդւոյ, որպիսի ոք էր Լեւոն. որ՝ և 'ի յառաջել հասակին և գործոցն՝ և 'ի թագաւորութեանն իսկ՝ անսայր խրատուց ողջամիտ պառաւոյն, և նորին թելադրութեամբ՝ մինչ չև էր երկրորդ անգամ կին ածեալ՝ ժառանգ աթոռոյ իւրոյ կարգեաց (յամի 1209) զՌուբէն՝ թոռն եղբօր իւրոյ համանուան՝ և որդի Անտիոքայ իշխանին. և յորժամ էառ 'ի կնութիւն զքոյր թագաւորին Կիպրոսի, զդստրիկ իւր Ռիթա՝ համանուն մօրն՝ զծնեալն յառաջնոյ կնոջէն Անտիոքացւոյ, նմա յանձնեաց սնուցանել և դաստիարակել: Ցոյցանէ ակներև լինի և երկարակեցութիւն մօր նորին և մտացն առուգութիւն[1]:

Տեարք Պապեռօնի և Լամբրունի ցայն ժամանակս հաւատարիմք կային 'ի սպասու կայսերաց, և հաւանելի է՝ թէ հանգոյն որդւոց նոցին՝ մարզեցան և որդիքն Ստեփաննեայ 'ի յոյն լեզու: Յանկորուստ մնացեալ բնագիրս թղթոցն և հրովարտակին տուելոյ առ ասպետս Հիւանդանոցին, յամին 1210, Լեւոն յունարէն ստորագրեալ է զանուն իւր, ΛΕΟ, և հայերէն զպատիւն՝ թագաւոր Հայոց. որպէս տեսանի 'ի ճակատ դրոշս, և որպիսի է և այս՝ 'ի ստորև պարգեւագրին տուելոյ յամի 1210 առ վերոյիշեալ ասպետսն: Այլ աներկբայ ևս է զի ըստ անհրաժեշտ հարկի ժամանակին և վիճակին՝ վարժեալ էր քաջ 'ի զինաշարժութիւն, և անդստին 'ի պատանեկութենէ ցուցեալ զարիականն պնդութիւն և զվեհութիւն:

203. Իսկատիպ ձեռնագրի Լեւոնի Ա, յամի 1210.

Գէթ տասն ամ տևեցին այսպիսի հրահանգք նորին 'ի Պապեռօն, 'ի վերջին ամս իշխանութեան Թորոսի, որ ընդ Մլեհի վրէժս 'ի Յունաց լուծանէր զչարաչար սպանման հօր նորա և զիւրեանց եղբօր՝ Ստեփաննէի, և յետոյ 'ի բռնակալութեանն Մլեհի, որ զօրինաւոր ժառանգն՝ զմանկլիկն Թորոսի՝ ստիպեաց փախստական տանել մինչև 'ի Հռոմկլայ, և թերևս գաղտնապէս անդ մեռուցանել զանմեղն, որպէս յայտնապէս՝ զխնամակալ նորին և զպայլ՝ Թովմաս, զմերձաւոր արեան իւրոյ. 'ի մահ արդեօք մատնէր և զորդիս Ստեփաննէի՝ առ անկասկած սեփականել ինքեան և ծննդոց իւրոց՝ զիշխանութիւն երկրին, եթէ յաջողեալ էր 'ի բուռն արկանել զնոսա, կամ մուծանել դաւաճանս 'ի Պապեռօն, որում ոչ կարէր ստնանել պատերազմական արուեստիւ, որպէս ոչ կարաց և Լամբրունի, թէ և տարևոր ժամանակօք պաշարեաց և յոյժ 'ի նեղ արկ: Իսկ իբրև ըստ գործոց իւրոց ընկալաւ և ինքն չարաչար կատարած՝ յիւրոց իսկ զօրաց նենգեալ և խողխողեալ, գահերիցութիւն ռուբինեան տոհմին անկանէր անհակառակ յորդիս Ստեփաննէի. և անդէն փութանակի հրաւէրք և խնդրակք առաքեցան 'ի զօրացն և յիշխանաց՝ առ անդրանիկն Ռուբէն (Բ), գալ և պսակազարդել: Ոչ դանդաղեաց և բարէմիտն Բակուրան՝ քեռի նորա՝ առաքել զնա իշխանական չքով և առատ գանձուք, որք և խայծ լինէին յորսալ զսիրտս հրաւիրողացն. այլ առաւել ևս հաճոյացան նոցա զուարթամիտ և համբոյր բարք նորընծայ Պարոնին, որ յիշատակաւ աղետից հօրն զորովելի լինէր. որոց՝ և պատշաճագեղ և արիական տեսիլ կերպարանացն՝ կենդանի նշանակ կայր: Դարձեալ և աջողակութիւնն 'ի զէնս և 'ի նետաձգութիւնս՝ յինքն յանկուցանէր զհասակակից երիտասարդսն, զորս և մեծածախ խրախճանօք զուարթացուցանէր, անխնայ սփռելով զանիրաւութեամբ մթե-

[1] Ըստ նախակարգեալ վարկածի տիոց Լեւոնի՝ զայսու ժամանակաւ հարկ էր մօր նորա անցեալ լինել զեօթանասնամենիւք:

բեալն 'ի Մլեհէ. միանգամայն և արդարակորով խորագիտութեամբ լուծանելով զվրէժ սպանման նորին 'ի դաւողացն, իբրև երախտաւորաց վարձս խոստանալով առ 'ի գտանել զնոսին. և 'ի խոստովանել երկուց ոմանց յուսով վարձուցն, եթէ ինքեանց ձեռօք սպանին զնա, զերկոսին եւ յիւրեանց բերանոց դատեալ տայր գետամոյն առնել։

Զամենայն ժամանակս իշխանութեան իւրոյ՝ զամս երկոտասան, Ռուբէն պարապէր կէս 'ի պատերազմ և 'ի յափշտակութիւն քաղաքաց և բերդորէից, և կէս 'ի խրախուճս և 'ի զբօսանս. ըստ այսոցիկ՝ արար և մեծահանդէս արքայակերպ հարսանիս, կին առնելով զԻզապել դուստր Տեառն Քարաքայ և Թորոնի, առ աներոյ իւրում, և զմնացորդ հանդիսին կատարէր 'ի դարձին յերկիր իւր։ — Դարձ արարեալ էր անդր յայնմ ժամանակի և Լեւոն՝ 'ի Պապեռօնէ. և կալով առ եղբօրն, ոչ գիտեմ յինչ առանձինն պաշտօն կամ գործ, նկատելի լինէր առաւել աչաց՝ խոհականագոյն և եռանդուն բարուքն. զի եթէ արիական կրթանօքն չէր պակաս յիշխանացեալ եղբօրէն, այլ ոչ նոյնպէս վաղվաղոտ և անարգել 'ի զբօսանս. նա մանաւանդ ծանր և կշռադատ 'ի գործս և 'ի խօսս. անդատին ցուցանելով երկնել մեծամեծ խորհուրդս, կամ առ մեծութիւն զօլ սահմանեալ. որով՝ թերևս ոչ կարէր անխտիր և հաւան աչօք հայել ընդ չռայլութիւն եղբօրն. մինչև կարծիս տալ ոմանց՝ եթէ խորհիցի ընկենուլ զնա 'ի պետական գահէն, և ինքնին բազմել. զէթ այսպէս յաչաղեալ 'ի քսուաց ոմանց՝ կասկածելի եղև առ վայր մի յաչս Ռուբինի. և զի սաստիկ նախանձախնդիրք էին պայազատքն իշխանութեան իւրեանց, ոչ վստահացաւ Լեւոն 'ի չքմեղս լինել բանիւք, այլ լռելեայն խոյս ետ 'ի Տարսոն (1180), և անտի 'ի Կ. Պօլիս. ուր եգիտ ոչ սակաւ մեծարանս 'ի կայսերէ, որ թերևս չունէր այնուհետև ակն՝ զԿիլիկիա միւսանգամ ընդ մորդս բիւզանդական ինքնակալութեան թուել։ — Բայց ոչ յամեաց Լեւոն 'ի պատուաւոր պանդխտութեանն. զի և ոչ յամեցին փարատիլ խէթք կասկածանաց երկոցուն հարազատացն յիրերաց. դարձաւ նա վստահութեամբ առ Ռուբէն, և ընկալեալ եղև 'ի սմանէ որպէս եղբայր սիրելի, և կարգեցաւ տէր մեծի և կարևոր Կապանն բերդի. և օգնական լինէր նմա 'ի յանձանձանս տէրութեանն և 'ի գործս պատերազմաց։

Որ ինչ ոչ դիւրաւ վճարէր զինու զօրութեամբ՝ յայն ժամանակս, յաճախ խորամանկութիւն և դաւանք՝ զայն 'ի գլուխ հանէին, իբրև օրինաւոր հնարք. այսպէս արար Բրինձն Անտիոքայ՝ Պեմունդ Գ. ընդ Ռուբէն, քանզի բազում զաւառս և բերդս հատեալ էր սորա 'ի սահմանաց Անտիոքայ. նաև քաղաքքն Կիլիկիոյ՝ զորս կալաւ յառաջագոյն, 'ի Խաչակրաց գրաւեալք՝ յօդեալք էին յիշխանութիւնն Անտիոքայ. և 'ի տիրանալն Հայոց 'ի վերայ սոցին՝ կամ բռնաւորք համարեալ լինէին, կամ լինք Բրնձին Անտիոքայ. այսպէս վարկանէր ինքեան Պեմունդ զՌուբէն. և թէպէտ իւրովք կամօք վաճառեալ էր սմա զՏարսոն քաղաք մեծ, և չէր ինչ նմա փոյթ զայսմանէ՝ իբրև զհեռաւոր տեղւոյ, այլ 'ի մերձաւորսն՝ ոչ ներէր ձեռնամուխ լինել օտարաց։ Վասն որոյ 'ի գալ երբեմն Ռուբենի յԱնտիոք՝ զբօսանաց աղագաւ, ինքնակամ կամ հրաւիրեալ 'ի Բրնձէն, որպէս ասեն ոմանք, կալեալ եղև և արգելեալ 'ի դիպահոջ (1185). յորմէ ոչ կարաց զերծանել՝ բայց 'ի բաց թողլով զվիճեալ կալուածսն, և տալով 'ի պատանդ զմայր իւր և զայլս, այլ և փրկանս՝ հազար ոսկի, զորս ետ բերել 'ի քեռւոյն իւրմէ (Ռակուրանէ). իսկ զի յառաջ քան զգերութիւնն պաշարեալ էր զԼամբրուն, նա և մինչ յարգելանին էր՝ ազդ արար առ Լեւոն՝ պնդել զպաշարումն և նեղել զՀեթմեանս։ Այս առաջին պատերազմական գործ յիշատակի Լեւոնի, թէ և որպէսն անծանօթ. իսկ ոմանք ասեն [1], յայսմ ժամանակի դարձուցեալ Լեւոնի զզէնսն և 'ի վերայ Բրնձին, և ստիպեալ զնա կորակոր դառնալ յետս. բայց յայտնապէս վկայի՝ զի դաշամբք և փրկանօք եղեւ ազատութիւն եղբօր իւրոյ։

Ոչ աւելի քան զմի ամ կամ զերկուս բաւեաց Ռուբէն 'ի կրկնում իշխանութեանն. թուեցաւ ոմանց թէ զըզուեալ վասն անարգանաց գերութեանն, և կամ վերջստին խիթացեալ 'ի թեկն ածելոյ այնմ՝ եղբօրն, կամակար մտօք մերկացեալ յանձնէ եթող նմա զպարոնութիւնն, և ինքն մեկուսացաւ 'ի կրօնաւորանոցի ուրեք կնքել զկեանսն. և իրազգաց զօլով մօտալուտ կատարածին, յանձն արար Լեւոնի զդստերս իւր՝ սնուցանել և վիճակեցուցանել ըստ պատշաճի. տալով եւ նմա խրատս զգուշաւորս, որպէս ազդէին նմա փորձ և վրիպանք անձին իւրոյ, և ակնկալութիւն հանդերձելոցն, յոր աճա երթայր՝ տալ համարս ամենիշխան դատաւորին։

Բ. Զօր մահուան եղբօրն, այն է վեցն մայիսի 1187 ամի [2], համարելի է սկիզբն իշխանութեան Լեւոնի կամ անուանելոյ Պարոն Հայոց. զի այսպէս անուանէին ցայնժամ պայազատք Ռուբինեանց. մինչ այլ ամենայն աւագորեարն և իշխանազունք՝ կոչէին Պարոնք առանձինն ինչ վիճակաց կամ բերդից, սոքա յանուն ազգին և համօրէն երկրի պետութեանն։ Զկայր հաւանօրէն այլ արու օրինաւոր ծնունդ 'ի զարմից տոհմին, և անհակառակ՝ Լեւոնի անկ էր աթոռն, ըստ վաղնջուց ազգային սովորութեան, և թուի ոչ ըստ Սալեան օրինաց, (որպէս կարծեն ոմանք), դստերաց Ռուբինի անկանել պայազատութեանն, և զրկել զնոսա Լեւոնի. թէպէտ և ոչ է ժխտելի, զի թէ զոյին եւ թեկնածուք կամ ակնկալուք աթոռոյն, ընդ բուռն և աննկուն հակառակորդի դիմահարեալք՝ խորտակեալք լինէին։ Ցայսմ մասին յոյժ և առաւելագանց իսկ վրէժխնդիր և կասկածոտ երևի Լեւոն, որպէս և յետոյ եղեալ դէպք ինչ ցուցցեն, առ 'ի տապալել և խլել զամենայն խութ և խէթ աւագասիրութեան իւրոյ և նպատակի՝ հասանելոյ 'ի կատար արքունական փառաց միապետական իշխողութեամբ. արդարև ոչ բռնաւորաբար, այլ ըստ աւատական օրինաց՝ խը-

[1] Այսպէս առէ Ապուլֆարաճ, ըստ լատին թարգմանութեան. « Leone contra eum strenue insurgente, Princeps pudefactus rediit. »

[2] Գողջիր 'ի նոյնքանիս ամսոյն (2 մայիսի) և վախճանեցաւ, յամի 1219, ապա լի 32 ամ իշխեաց իբրև Պարոն և իբրև Թագաւոր։

նամակալութեամբ և դիւրելով ընդ ձեռամբ անկելոցն և լիծ անուանեալ իշխանաց. բայց անողոք և աններող առ ամենայն գլուխ՝ որ ոչ առ գլուխ իւր խոնարհիցի, 'ի սահմանս ընդարձակ և ընդարձակելի տէրութեան իւրոյ։

Զայսպիսի բարուց և զօրութեան Նորա փոքր 'ի շատէ ունելով ծանօթութիւն Պարոնայց երկրին, անհակառակ նուաճեցան ընդ ձեռամբ Նորին, որպէս երբեմն եղբօրն. և ինքն Լեւոն ըստ Նմին օրինակի շնորհակալու և զուարթ դէմս եցոյց. որպէս զի հաստատեցան և միտք այնոցիկ՝ որոց երբեմն քսութեամբ խոտորեցուցեալ էր 'ի Նմանէ զսիրտ Ռուբինի։ Անյիշաչար եղև Նոցա Լեւոն. « և ոչ » ինչ պատճառի եղև վրէժխնդիր ումեք », ասէ պատմիչն. և յաւելու՝ վասն բարուցն, եթէ « Էր սա այր իմաստուն և հանճարեղ. ձիավարժ հմուտ, և 'ի զինուո-




204. Լեւոն Ա, ըստ հին լատին մատենի.

» րութիւնս քաջասիրտ, և արիագոյն յամենայն գործ » բարութեան՝ 'ի մարդկայինսն և յաստուածայինսն, ա- » րագ և զուարթերես »։ Կշռադատ Նկարագիր, ճշմարտեալ 'ի Լեւոն յամենայն գործս իւր. հանճար սուր մինչև 'ի յետին խորագիտութիւն՝ որ է խորամանկութիւն. պնդասիրտ քաջութիւն, բազում անգամ փորձեալ՝ մինչև յանձեռնհասից յանդգնութիւն. արագութիւն անվրէպ, որով միայն յաջողեաց երբեմն 'ի դէպս դժուարինս. իսկ զուարթութիւն՝ իմա՛ ինձ զմեծութիւն ոգւոյ, և զառատութիւն ձեռին և սրտի, մեծագոյն աշխարհաց իշխեցողի վայելուչ, որով զարքունիս իւր և զամենայն դասու մարդկան վիճակ՝ ըստ իւրաքանչիւր պատշաճի յարդարեաց և ճոխացոյց. և 'ի վերայ այսոցիկ՝ ձգեաց առ ինքն զինքնագլուխ կամ զապստամբ և զուծացեալ տեարս այլալեզուս և այլակրօնս՝ կողմանց կողմանց, և բերդից մերձաւորաց և հեռաւորաց, կամովի խնդրել տալով զհովանաւորութիւն իւր, և աճեցուցանելով Նոքօք զերկիր իւրոյ իշխանութեանն. որպէս զի՝ 'ի սուղ ժամանակի եղեն Նորա պարոնայք լինք եօթանասուն և երկու բերդից, աւագք և կրսերք, առաւել կամ Նուազ ազատութեամբ. և բոլորակութիւն սահմանաց հայրենեացն, եթէ օրէն իցէ ասել, պարզեալ ձգեցաւ ընդ աջ և ընդ ահեակ, ընդ արևելս, և մանաւանդ ընդ արևմուտս. որպէս զի ըստ այսմ գծի՝ վեշտասան աւուրց գնացք ճանապարհի էին կալուածոց տէրութեան Նորա յամի 1211, մինչ 'ի հարաւոյ ընդ հիւսիս՝ երկօրեայ ևեթ, այսինքն է 'ի ծովէ մինչև 'ի պատուարս Տաւրոսի՝ անջրպետս Փռիւգիոյ և Կապպադովկիոյ։ — Իսկ հմտութիւն ձիավարժութեան իմանամ՝ ոչ լոկ ըստ Տրդատայն՝ « յերիվար կամակար » աշտանակել և կորովի ձիավարել[1], և զէնս շարժել յա- » ջողակաբար, և այլ պատերազմականս ուսանել ա- » խորժակս », այլ յաւէտ ըստ հրահանգաց և օրինաց արևմտեան ասպետութեան այնր դարու. զի պատմիչք մեր ձիավարժս կոչեն երբեմն զԱսպետս Խաչակրաց։

Բազում ինչ կամ բազում անգամ զբարոյական կրից և ձրից Լեւոնի յիշատակեալ է գրչաց, ըստ վերոյնշանակեալ բանից պատմչին, այլ ոչ և զփափագելի Նկարագիր բնական հաստուածոյ Նորին և զկերպարանացն, թէ որպիսի ոք էր տեսլեամբ և հասակաւ. և զի լաւն գիրք (ծանօթքն ինձ), երաշխաւորեացէ խնդրոյս վաւերական կնիքն ոսկեղէն, տպաւորեալն 'ի ճակատ պատմութեանս. որ զի բաւական մեծ է, անմարթ է թէ չկրիցէ՝ ըստ չափուն և ըստ Ներելոյ արուեստին, գոնեա ընդ աղօտ զտիպս կերպարանաց կնքողին. որ և՝ ըստ այսմ՝ թուի ինձ ոչ յաղթահասակ և անձնեայ ոք լինել. այլ սակայն, ըստ խորհրդածութեան Խորենացւոյս մերոյ (Գ, Ը.) որ յԱղեքսանդր Մակեդոնացի, եթէ և « էր մարմնովն փոքր, » այլ... չափ հասակին՝ ոչ զհոգւոյն խափանէր աշ- » խոյժս »։ — Ի հռչակաւոր մատենի լատին ժամանակագրութեան միոյ[2], գրելոյ 'ի սկիզբն ԺԴ դարու, գծագրեալ են և պատկերք թագաւորացն յիշեցելոց, (թէպէտ և ոչ համարին հաւատարիմք). և ուր և ուրեք մերս յիշի Լեւոն՝ այսպիսի ընծայի Նմա կերպարան, փոքրկագոյն չափով։ Գոյ յուսալ՝ թէ յայտնեսցէ ժամանակ և 'ի մերոց հայրենի ձեռագրաց՝ զպատկեր արժանաւորին 'ի տեսութիւն. այլ զի այժմիկ պակասէր մեզ, ըստ վերոյ յիշեցելոցս տուաք կերպաձևել զնկար Նորին, 'ի միջի հռչականուն ժամանակակցաց իւրոց, ընդ որս և եղեն Նորա գործք և դաշինք և պայմանք, որպէս տեսցուք 'ի պատմութեանս՝ յառաջ խաղալով. և ոչ անհաճոյ համարիմ վերծանելեաց յանդիման ունել և զկենդանագիրս[3] Նոցին՝ առընթեր մերոյ թագաւորիս։

1 Կամ չէր վարել, ըստ այլում Օր. Խորենացւոյ, Բ. ԿԹ։

2 Մատեանս այս անուանեալ կոչի Chronologia Magna, (Մեծ Քրոնիկոն), և պահի 'ի Մարկոսեան գրատան քաղաքիս Վենետկոյ։

3 Խոյզ և խնդիր արարեալ գտաք զպատկերս սոցին, և նշանակեցաք ըստ իւրաքանչիւր անուանց. և ոչ երկբայիմ՝ զի թէ ոչ ամենեցուն, այլ յոլովից առաւագոյն իցեն տիպք կերպարանացն։

Գ. Առաջին գործ Լեւոնի 'ի դէպ էր լինել՝ և եղև իսկ, ճանաչել և հատուցումն առնել երախտեաց եղբօր իւրոյ՝ զոր յաջորդեաց. ըստ բացայայտ կտակի Նորին՝ փութացաւ զետեղել զերկոսին յետամնացս Նորին՝ դստերս յարժանաւոր տունս, միանգամայն և յազգայինս, ըստ ըղձից հօր Նոցին։ Մատաղ օրիորդք էին տակաւին Նոքա՝ անուանեալք Ալիծ և Փիլիպպինէ, հազիւ թէ հնգամեայ և վեցամեայ. այլ սովորութիւն ժամանակին, և յաւէտ հնարք քաղաքագիտութեան և ընտանի անդորրութեան, պահանջէին կանուխ յապահովել զբաղդ Նոցին, մանաւանդ թէ զիւրեանցն. զծնողացն ասեմ և զդայեկաց կամ պայլից, զի այսպէս անուանէին խնամակալք դեռահասակ պայազատաց որբացելոց։ Ազնուագոյնք յազատորդիս Հայոց ժամանակին, որք և յարքունիս իսկ Լեւոնի կային յայնժամ, էին եղբարք երկու, Հեթում և Շահնշահ, որդիք Զօրտուանելի մեծատոհմ իշխանի Սասնոյ [1], և քեռ կաթողիկոսին Հայոց (Գր. Տղայոյ). որ է ասել, մայրենեօք Պահլաւունի, տոհմ մեծահարկի յետ Բագրատունեացն. և էին երկոքին եւս «արք բարետեսիք», ըստ պատմչին. որոց անդրանկանն՝ ետ Լեւոն զանդրանիկն Ռուբինի՝ զԱլիծ, և պաշտատական նմա զքաղաքն և զգաւառ Մասայ. իսկ կրսերոյն՝ Շահընշահի՝ ետ 'ի կալուած զՍելեւկիայ վիճակն, խոստմամբ որպէս թուի՝ Փիլիպպինեայ, զի դեռաբուսիկ էր սա, և սնանէր առ հանւոյ իւրում Ռիթայ (մօր Լեւոնի)։ Յետ ամաց լոկ վեցից, այն է յամի 1193, 'ի միում ամսեան ժամանակի՝ յորում վախճանեալ էր կաթողիկոսն Գր. Տղայ ('ի 16 մայիսի), մեռան և երկոքին սոքա եղբարք, ոչ յայտնի ինչ բռնօրէն մահուամբ. այլ զի զուգաժամանակ եղև կատարած երեցուն եւս արենակցացն, և զի՝ թուի իմն թէ խէթ ինչ գոյր ընդ Նոսա և ընդ Լեւոն, զոր ոչ յայտնեաց պատմութիւն, համարեցաւ յոմանց, ըստ համառօտ ժամանակագրի, թէ «Լեւոն եղև պատճառ մահուան Նոցա». յոր կարծիս անկեալ երևի և ինքն գրողն, թէպէտ և ըստ արևելեան սովորեալ ոճոյ յաւելուցու, «այլ ճշմարիտն Աստուծոյ է գիտելի»։ Ի Նոյն ստիպիմք և մեք թողուլ, մինչև յայտնեսցէ ինչ պատմութիւն զգործոց Սասնեցւոցն և զեղանակէ վախճանի Նոցին, զի այլուստ ինչ ոչ գիտեմք։ — Եթէ հարսնացեալ էր Փիլիպպինեայ 'ի Շահնշահ և եթէ ոչ՝ այն չէ յայտ, բայց այս՝ զի երկոքին եւս քորքն այրիացեալք էին, որպէս թուի, մինչ չև 'ի կատարեալ չափ ամուսնութեան հասեալ [2]։ Երէցն՝ Ալիծ՝ յերկրորդում ամին (1194) տուաւ 'ի կնութիւն Ռեմունդի, անդրանկան և ժառանգի Բրնձին Անտիոքայ, որպէս տեսցի յառաջիկայդ, և ծնաւ զՌուբէն Բրինձ, զպատճառ բազում անցից հակառակութեանց ընդ Նորայն իշխանութիւն և ընդ Լեւոնին, թէ և վասն հաստատելոյ զխաղաղութիւն 'ի միջի իւրեանց՝ արարաւ խնամութիւնն այն. և առ առաւել եւս սերտել զնոյն՝ ինքն իսկ Լեւոն, որ առ քաղաքական տեսութեանց թուի ցայն վայր ամուրի կացեալ, էած իւր կին զդուստր եղբօր կնոջ Բրնձին Անտիոքայ (Գ Պեմունդի), Իզապել կամ Զապլուն անուն. և այսպէս համարէր յապահովել զահեակ կողմն, զարևելեանն՝ տէրութեան իւրոյ. իսկ յամրութիւն աջոյն, այն է արևմտայնոյն, ուր առ կռան կայր ախոյեան զօռ և այլազգեն՝ սուլտանն Իկոնիոնի, զկըրսեր դուստրն Ռուբինի զՓիլիպպինէ, (զոր առ զամ մի խաբէութեամբ խոստացեալ էր տալ Օշնի՝ անդրանկան Հեթմոյ տեառն Լամբրունի, և այնու՝ իբրև խայծիւ՝ որսաց զնա 'ի թակարդ իւր), վիճակեցոյց զերագոյն գահու, Նորահաստատ Նիկիական կայսրութեանն Յունաց, տալով 'ի կնութիւն Թէոդորի Ա Լասկարեայ կայսեր [3]. և 'ի



205. Դահեկան Թէոդորի Լասկարեայ կայսեր Նիկիոյ.

ձեռն այսպիսւոյ հզօր փեսայի՝ թէ և հեռաւորի, առանց իւր ինչ ձեռն տալոյ՝ յաջողեաց մեծաւ պատերազմաւ՝ խորտակել (1210) զսուլտանն Ղըյասէտտին Քէյքաւզ կամ Խօսրովշահ՝ ըստ մերոյ պատմչի [4], որ և 'ի մարտի անդ սպանաւ։ Բայց այսոքիկ յետ բազում ամաց, է որ 'ի պարոնութեանն և է որ 'ի թագաւորութեան Լեւոնի։

Գ. Իսկ զառաջինն անդէն իսկ 'ի սկզբան պայազատութեանն՝ յայսմ մարդէ (յարևմտից) յարեաւ մրրիկն, 'ի Նոյն սուլտանութենէ՝ հաստատելոյ 'ի մէջերկրեայս փոքուն Ասիոյ, գրեաթէ զուգաժամանակ հաստատութեանն Ռուբինեանց, որ զյոլովս 'ի Նահանգաց զեղեցիկ այնր մասին արևմտեան Ասիոյ՝ եհատ 'ի Յունաց. և երբեմն, որպէս յիշեցաք 'ի Դրուագի Ռուբինեանցն հարըստութեան, 'ի Նոցին իսկ 'ի Յունաց կայսերէն դրդեալ՝ յարեաւ երկիցս և երիցս 'ի վերայ քաջայաղթին Թորոսի Բ, և ոչ յաջողեցաւ առնել ըստ կամաց թելադրողին, և յետոյ եկաց, հաշտութեան պայմանօք. այլ հզօրագոյն գրաւական հաշտութեան կամ զինադուլ առնելոյ ընդ երկոսին սահմանորդսն, ընդ Իկոնիացիսն ասեմ Թուրքս և ընդ Ռուբինեանսն Հայս, բնապատուար կարկառքն Տաւրոսի կային, երկոցուն եւս դժուարանցանելիք, այլ ոչ իսպառ անդրժելիք. զի որպէս եցոյց Նկարագիր բնութեան երկրին, ոչ որպէս զկովկասեանսն միապաղաղ պարսպաձև յարակցեալք են լերինք հարաւայնոյն Ասիոյ փոքու, այլ բազումս ունին կտրուածս, կածանս Նրբուղիս, թէպէտ և անձուկս և դժոխաձևս, այլ սակայն ոչ

1 Հաւանօրէն Զօրտուանէլս այս թոռն է Զօրտուանէլի՝ որդւոյ Թոռնկայ քաջի, (զոր սպան Նենգաւ Փիլարտոս), որդւոյ Մուշեղի, տերանց Սասնոյ։

2 Երեցու քեռն իսկ՝ Ալիծի՝ հազիւ յայնժամ մարթ էր լինել երկոտասանամեայ։

3 Թէոդոր (որ † յամի 1222) այրի էր յորժամ էառ զՓիլիպպինէ, և ծնեալ 'ի Նմանէ որդի մի վաղամեռ, Կոստանդին անուանեալ, զըժտեալ ընդ կնոջն՝ դարձոյց զնա 'ի Հայս, և էած այլ կին (1215), (ոչ գիտեմ առ կենդանեաւ Փիլիպպինեայ թէ մեռեալ գոլով սորա), զՄարիամ դուստր փռանկ կայսերն Կ. Պօլսի։

4 Բայց և ինքն Թէոդոր յետ սակաւ ամաց (1214) գերի անկաւ 'ի ձեռս Ազզէտտին սուլտանի, և տուեալ ծանր փրկանս՝ զերծաւ։

անանցս. և ընդ այսոսիկ՝ բազում անգամ, և երբեմն նաև ընդ կոհակս բարձանցն՝ խուժեցին երկուստեք թշնամիքն 'ի սահմանս իրերաց։ Որպէս և յայսմ յիշեալ նուագի, կամ 'ի չփոթութեան կարծելով զՀայս՝ վասն մահուան Ռուբինի և յաջորդին ընտրութեան, կամ յուսադնեալ 'ի յաղթանակս խրոխտագոյն ախոյենին քրիստոնէից՝ Սալահէտտինի, որ յանհնարին տագնապի կացուցանէր զոսսա յայնմ ժամանակի յԱսորիս և 'ի Պաղեստին, Ռոստոմ ոմն գլխաւոր Թուրքաց, 'ի նոյնօրինակ վտանգ՝ թերևս և 'ի սպառ 'ի ծառայութիւն կամելով արկանել զՀայս, մեծաւ, և (ըստ պատմչին) անթիւ և անհամար բազմութեամբ հրոսաւ Թուրքմանաց՝ կոխեաց եմուտ յեզակարծումն 'ի սահմանս Հայոց, և վաղվաղ յառաջեալ բանակեցաւ յանդիման նորոյ իշխանանիստ քաղաքին Սսոյ, յանուանեալ տեղին կամ 'ի դաշտն Ռաւին [1]։ Ոմանց՝ ինքնագլուխ ոմն և բազդախնդիր թուեցաւ սա այս. այլոց՝ մի 'ի զօրապետաց կամ յորդւոց սուլտանին Իկոնիոյ. զի և չէր մարթ սոսկականի ումեք այնքան գումարտակս կազմել յերկրի հզօր աշխարհակալ սուլտանի, և առանց նորին հաւանութեան կոխել անցանել ընդ սահմանն։ Թերևս անհրաժանգ՝ սակայն ահաւոր էր բազմութիւնն. ահաւորագոյն ևս յանկարծահաս ճապաղումն.




206. Կնիք Թորոսի Ա Պարոնին Հայոց.

որ զի ոչ ներէր Լևոնի՝ այն ինչ յիշխանութիւն հասելոյ՝ զօրաժողով լինել ըստ ժամուն պիտոյից, հարկ առնէր անհնարին իմն երագութեան և անսովոր արիութեան, եթէ վանել կամէր զօտխն և զհրոսակս նորին։ Ջերկոսին ևս 'ի վար էարկ պնդասիրտն և հնարագէտ Պարոնն Հայոց. հանգոյն իմն նախնի ազգակցացն մամիկոնեան Վահանեանց՝ մտաբերեաց սակաւութեամբ իւրայոցն առաւել ափչեցուցանել զթշնամիսն՝ քան եթէ անձեռնհաս յոլովութեամբ գնդից. և ըստ ոչ ուրուք կարծեաց՝ յանակնկալ տեղւոջէ՝ նրանիւք լոկ արամբք 'ի վեր երևեալ, և ուղղակի գրոհ տուեալ 'ի կողմն ճամբարին՝ ուր Ռոստոմ կայր անկասկած, իբրև չանթ կայծական 'ի քթթելական բաղխեցաւ ենար տապաստ արկ գխրոխտացեալ գլխաւորն այն. և որպէս յուսայրն՝ աղմկեալ զրովանդակ խուժան անկարգ բանակին՝ խառնիխուռն խուճապեցոյց 'ի փախուստ, և զհետ մտեալ՝ կոտորէր և հալածէր մինչև 'ի կողմանս Սարաւանայ քարաբերդին՝ յափունս Ջահանայ, որ թերևս սահմանամէջ էր յայնժամ ընդ բաժին երկրի իւրոյ և ընդ Անտիոքայն։ Այնքան զարմանալի և գերմարդկային իմն համարեցաւ գործս այս, մինչև համբաւել՝ մարտակիցս Լևոնի եղեալ երկուց սրբոց Զօրավարացն՝ Գէորգեայ և Թէոդորոսի, մարմնաւոր տեսլեամբ իջելոց 'ի բարձանց բերդին Սսոյ. թերևս զի եկեղեցիք կամ սեղանք էին նուիրեալք յանուն Սրբոցս այսոցիկ 'ի բերդին անդ պանծալւոյ։ Եթէ որքան մեծ էր պաշտօն Սրբոցս հզօրաց և առ հզօր նախնիս մեր, և առաւել առ նոյին և յայժմուս, վկայեսցէ և չքնաղագիւտ կապարեայ կնիքս այս մերոյս Ա Թորոսի, թոռին մեծին Ռուբինի, որ զերկոսեան ևս պատկերս ունի զուգակիցս 'ի միում դիմի, 'ի միւսումն՝ գրէ յունարէն, յանձնեալ զինքն 'ի պաշտպանութիւն երկոցուն քաջայաղթ վկայիցն, Թէոդորոս Սեբաստոս Ռուբինեան։ — Վիպասանն Վահրամ զմի 'ի Սրբոցն միայն յիշէ զօրավիգն՝ 'ի լևոնեան պատերազմիս.

« Քանզի Ռոստոմն էր սատակեալ,
Ի Գէորգէ սրբոյ խոցեալ [2] »։

Աւլ եթէ առաւելազանց թուիցի այսպիսեաց ոմանց մարտակցութեամբ յաղթել Լևոնի, զարմանալի ևս իցէ մենամարտիկն նորա քաջութիւն. իսկ որ 'ի յաղթութենէ անտի հիացումն հանուրց, և վստահօրէն այնուհետև յարումն 'ի նա իւրայոցն ազգայնոց, ընդ այս ոչ են զարմանք, զի և չէր մարթ այլազգ լինել։

Եթէ ոչ որպէս արժանն պահանջէ՝ ծանօթք իցեն անձն և տոհմն Ռոստոմայ [3] և յեղանակ արշաւանացն և կորանաց, աներկբայ են իրքն, լռեալ թերևս յայլակրօն մատենագրաց՝ առ պատկառանաց, այլ յամենայն մերայոց յիշեցեալ սակաւ ինչ այլայլութեամբ. յորս հաւատարմագոյն վարկանելի է ժամանակակցին և վեհագոյն անձին գրուած, այն է Գրիգորի Տղայոյ կաթողիկոսի՝ յՈղբսըն Երուսաղեմի. որ թէ և զանուն իսկ ասպատակողին ոչ յիշէ՝ այլ զդէպսն ոգջիկ աւանդէ, ցուցանելով յետ գերութեան Սրբոյ քաղաքին և արշաւանացն յԱնտիոք՝ եղեալ զ'ի մեր կոյս արշաւանքս։ Եւ որպէս չարայարութիւն տողիցն ծանուցանէ [4], միւս ևս անգամ բաղխեալ է Լևոնի ընդ Թուրքմանիկան, հալածելով և կոտորելով 'ի

1 Տես զանծանօթ տեղւոյս և 'ի Տեղագրութեանս, յէջ 214։

2 Մարտակցութիւն Սրբոյս ոչ միայն առ քրիստոնեայս, այլ և առ այլազգեաց երբեմն հռչակեալ. որպէս և 'ի նմին տարւոջ՝ յաւուրս պայազատութեան Լևոնի՝ 'ի հռչակաւոր և յաղթական պատերազմին Նազարէթի, յորում հինգ հարիւր ասպետք կորովիք անհնարին քաջութեամբ կռուեալ կոտորեցան 'ի գնդէ եօթն հազար հեծելոց Աֆտալայ՝ որդւոյ Սալահէտտինի, յորժամ յետինն միայն ձիապետ կայր կենդանի՝ հիացեալք այլազգեացն ընդ բազմապատիկ գործս քաջութեանն, զնա ինքն համարեցան Ս. Գէորգ, և աշերտէին մի տալ զանձն 'ի մահ. և իբրև այլ ևս նախճիրս գործեալ՝ անկաւ նա, բարձեալ որպէս զնոյն Սուրբ Զօրավար՝ բաժանէին զհանդերձս նորա և զանդամս իսկ, 'ի պահպանութիւն անձանց իւրեանց։ Նորին Սրբոյ յիշատակ է առ նոսա Խըդրէլլէզն, որ 'ի 22 կամ 23 ապրիլի, յորում աւուր հաստատեալ է տօն նորին առ քրիստոնեայս։

3 Հին համառօտ պատմիչ զարմին Ռուբինեանց, և Վահրամ որ ըստ նմանէ վիպասանէ, Իսմայէլոյէ կամ յաչէ Իսմայէլէ ասեն զՌոստոմ. Գր. Տղայ՝ խառնիխուռն միահամէ զցեղն՝ անուամբք Եսաւայ, Քանանու, Հագարու և Սառայի. Կիրակոս՝ Թուրքս և Տաճիկս կոչէ զհակառակորդսն, և յատկապէս հպատակս սուլտանին Հալպայ և Դամասկոսի. Կիլիկեցի պատմիչն և Սմբատ՝ Թուրքման ոմն ասեն։

4 « Օտար որդիքըն Սառային
Միահաղոյն մըտին յերկիրն՝
Որ 'ի նահանգըն Սիւրային.

կողմանս Գերմանիկիոյ. զոր յայտնագոյն ևս աւանդէ Կիրակոս պատմիչ, (թէպէտ և սա բազում ինչ 'ի համբաւոյ լուեալ՝ այլայլէ զիսկն), և զերկոսին ևս ասպատակսն՝ համարի գունդս զօրաց սուլտանին Հալպայ և Դամասկոսի. այլ սխալէ յայսմ. զի 'ի ժամանակին յայնմիկ (1187–90) բարձեալ էր իշխանութիւն Աթաբէկաց տեարց քաղաքացն այնոցիկ, կամ որդւոց հռչակելոյն Նուրէտտինի, և առ հասարակ ամենայն Ասորիք և Միջագետք անկեալ էին ընդ հզօր ձեռամբ զերահռչակն Սալահէտտինի, զոր տեսաք զբաղեալ 'ի նուաճումն կալուածոց փռանկաց 'ի Պաղեստին և 'ի Սիւրիա. և անգամ ուրեմն զերծեալ 'ի կասկածանաց վրէժխնդրութեան Փրետերիկեայ կայսեր Ալամանաց, կամեցաւ ջախջախել զԼեւոն: Իսկ զարդիս՝ արևմտեան Թուրքմանիկքն զրգուէին զսա, կամ հիւսիսականք՝ վրանաբնակքն 'ի կողմանս Գերմանիկիոյ. եհաս արագապէս և եհար հարուածս մեծամեծս, յաւուրս տարեկանաց մեծի պահոց և բարեկենդանի նոցին, ըստ վիպասան կաթողիկոսին,

« Ցականաւոր մեծի տօնին,
Ցաւուր ըն այն զատկի նոցին ».

իմանալով զրամազանն. և բազում աւարաւ և գերութեամբ դարձաւ 'ի Սիս [1]:

Ե. Թերևս որիչ է յայսմանէ և յետոյ ուրեմն՝ պատմածն Կիրակոսի, 'ի ժամանակի ոչ այլազգեացն զատկի, այլ մերձ 'ի քրիստոսական Զատկի աւուրս. և հաւանօրէն սուլտանն Իկոնիոնի կամ զօրավար մի նորին էր (զոր նա սուլտան Հալպայ ասէ). և զի նա միայն մանր ինչ հանգամանօք պատմէ զդէպսն, տեղի տացուք բանիցն. « Զօրաժողով եղև 'ի վերայ նորա (Լեւոնի), յաւուրս զատկաց. և յղեաց առ Լեւոն պատգամս, այսպէս. Եթէ ոչ հարկեցես ինձ ծառայութեամբ, բազմութեամբ զօրաց իմոց 'ի սուր սուսերի մաշեցից զամենայն բնակիչս երկրի քո, մայր առ մանկամբ. և զտօնդ ձեր՝ յորում ուրախանայք քրիստոնեայք՝ պատուելով զդա, որպէս թէ յարութիւն Քրիստոսին ձերոյ իցէ, դարձուցից զդա 'ի սուգ ձեզ, և արարից զի զպատրաստեալ կերակուրն ձեր վասն տօնիդ՝ ուտիցէք զայդ 'ի վերայ ձիոց: Եւ իբրև առաքեաց զայս, ինքն առեալ զբազմութիւն զօրաց իւրոց բանակեցաւ առ սահմանօք նորա. և մեայր գալստեան պատգամին: Իբրև գիտաց արքայ Լեւոն զգալ պատգամին և զօրաժողով լինել այլազգեաց, հրամայեաց զդեսպանսն յայլ կողմն շրջեցուցանել աշխարհին, պատճառանօք թէ այդր իցէ արքայն. և ինքն աճապարեալ ժողովեաց զզօրս իւր, և ընդ այլ կողմն ել 'ի վերայ նոցա, և յեղակարծ ժամու անկան 'ի վերայ նոցա. եհար զնոսա հարուածս մեծամեծս: Մազապուր փախեաւ սուլտանն. և Լեւոնի արքայի առեալ զաւար բանակին այլազգեաց՝ հանդերձ վրանօք նոցա, և զգերիսն ամենայն, եկն բանակեցաւ յաշխարհին իւրում առ ափն գետոյն. և հրամայեաց զօրաց իւրոց կանգնել զխորանս այլազգեաց, և զիւրաքանչիւր զդրօշս կանգնել 'ի դուռն խորանին իւրոյ. և հրամայեաց կոչել զդեսպանսն, և իբրև եկին՝ տեսին զխորանս և զվրանս զօրաց իւրեանց և նշանակ դրօշից իւրաքանչիւր գնդից, և զարմացան հիացմամբ մեծաւ, զի ոչ գիտէին զեղեալսն. ապա իբրև իմացան՝ զիմեցին յոտս թագաւորին, և զապրիլ անձանց խնդրէին: Իսկ արքայն մարդասիրեալ առ նոսա՝ շնորհեաց նոցա զկեանս, առաքելով զնոսա առ տէրն իւրեանց. և զայն հարկն՝ զոր պահանջէր սուլտանն յարքայէն, զնոյն և ևս յաւելեալ եդ 'ի վերայ նորա, և ծառայեցոյց զայլազգին »: Միաբան այսմ վկայեն և այլ պատմիչք մեր, եթէ հանգոյն եղբօր իւրոյ Ռուբինի՝ որ այնպէս նեղէր զգոռ դրացին՝ զսուլտանն Իկոնիոյ, մինչև հարկ լինել գոռագոյնն Սալահէտտինի գալ նմա յօգնութիւն (1180), ըստ պատմելոյ Արաբաց, և ստիպել զնա արձակել զգերին և թողուլ զվիճակն յափշտակեալս. սոյն օրինակ և Լեւոնի դիպող ժամ գտեալ՝ 'ի տագնապի կացուցանէր զորդիս Խլիճ-արսլանն սուլտանի, մերթ ասպատակութեամբ՝ յաւար և 'ի գերութիւն, և մերթ յափշտակելով զբերդորայս նորին [2]:

Մի 'ի գլխաւորաց անտի ամրոցաց էր Պռականա, որպէս ցուցաք 'ի տեղագրութեան, 'ի գաւս Կիլիկիոյ. յո-

Առին աւար և գերեցին
Զօրքս ձեռամբ Անտիոքին:...
Ապա ընդ լեառըն Տօրոսին
Մըտին յաշխարհըն Սիսուանին,
Ուր իշխեցող էր Հայկազնին
Մեծայաղթող Լեւոն արքին:
Անդ մեզ եհաս խնամք վերին
Եւ քաղցրացաւ կամք Անեղին.
Եհաս 'ի դաշտ լայնանըստին
Ասպատակաւ՝ զօրու նոցին,
Լեւոն իշխան Կիլիկեցին
Մանուկ տիօք, բնութեամբ բարին.
Էառ 'ի ձեռըս զերկսայրին,
Զայնեաց զանուն սըրոյ խաչին.
Կայծեաց 'ի մէջ պատերազմին,
Որպէս զարծիւ իւր յերամին.
Եհար ըզկուշտ երիվարին,
Արշաւեցուց 'ի մէջ նոցին.
Ուղղեաց ըզխոց իւր նիզակին,
Եհար ըզախոյս Էլխատուրին,
Դիւաթաւալ կացոյց դաշտին.
Որք անդ եկին տիրել երկրին՝
Ըսկուռն եղեն սըրոյ նորին.
Ցաղթեաց նոցա մեծ կորովին,
Մատնեաց 'ի սուր իւր սուսերին.
Այնքան՝ զի գետք արեան ելին:
Աճապարեալ յետ նահանջին.
Եւ փախուցեալքըն կորընչին.
Քանզի ըզհետ հասեալ քաջին՝
Եւ կոտորեաց 'ի լայն դաշտին »:

1 Ապա ըզհետ մըտեալ քաջին՝
Առիւծաբար ուժով բազկին,
Եւ անդ եհար դարձեալ կրկին
Ըստ առաջին նոյն հարուածին:...
Էառ զաւարըս գերողին
Զանբաւ ժողով բանականին,
Եած 'ի մայր իւր քաղաքին,
Որ է Սիսուան անմատչելին »:

2 Արքունի պատմիչ մեր ասէ. « Խոհեմ իշխանօքն և քաջամարտիկ զինուորօք՝ քաջապէս մղէր զհոյլս թշնամեացն. և զորդիս Խլիճ-արսլան սուլտանին՝ որք տիրեցին տան Հոռոմոց՝ նեղեալ զնոսա յոյժ, առնլով 'ի նոցանէ բերդորայս, և գերելով զերկիր նոցա աւերմամբ: Եւ արիագոյն քաջութեամբ սպառազինեալ կայր 'ի մէջ թշնամեաց՝ իբրև զախոյեան անպարտելի »:

րոյ վերայ գիշերայն յարձակեցաւ գունդստապլն Հայոց Սիր Պաղտին, թերեւս փռանկ ազգաւ, հաւանութեամբ Լեւոնի. բայց ոչ միայն ոչ յաջողեցաւ գաղտնալ զբերդն, այլ և սպանաւ 'ի տեղւոջն. յետ երկուց ամաց ինքնին Լեւոն նոյնօրինակ գաղտ գնացիւք հրոսեալ՝ 'ի բուռն էարկ զբերդն, կալաւ և զբերդապահն՝ որ կոչէր Տիփլի ամիրայ, և սպան, և ընդ նմին սրո երկերիւր 'ի պահապանաց, 'ի վրէժ սպանման սպարապետին իւրոյ (Պաղտինի)։ Եւ զայս արար յերկրորդում ամի իշխանութեան իւրոյ (1188). յորում ամի շինեաց և զհսկայագործ զարմանալի դղեակն Անազարբայ, և արձանագրեաց պանծալի յիշատակաւ, որպէս աւանդեցաւ 'ի տեղագրութեան քաղաքին։ — Գուցէ զայսու ժամանակաւ եղև և առումն և վերաշինութիւն Լուլուայ ամրոցի 'ի Հեթմեանն Շահնշահայ, զոր յիւր զօրաւիգն կրթեաց Լեւոն, տեղի ապաւինի և գիմամարտ կարգեալ ընդդէմ ամրոցաց արեւմտեան հարաւային կողմանց Երկրորդն անուանեալ Կապպադովկիոյ, և այնու յաջողեցաւ գրաւել զմայրաքաղաք նահանգին զՏիանա, որպէս ուսաք յեղբօրէ վերոյիշեալ բերդակալին, 'ի Ս. Լամբրոնեցւոյն։ Ցայտ այսու լինի զի ոչ սակաւ բազագոյն քան զրնիկ սահմանս Կիլիկիոյ՝ ճապաղեցաւ Լեւոն. քանզի և չէր ոչ նորա և ոչ նախնեաց իւրոց սահմանս ինչ գծեալ իւրեանց իշխանութեան և երկրակալութեան. այլ ըստ նախնեացն առածի՝ որ 'ի Խորենացւոյն աւանդեալ, «Սահման քա» ջաց՝ զէնն իւրեանց, որքան հատանէ՝ այնքան ունի». և Լեւոնի հատու յոյժ էր զէնն, և աւէպ սրեալ ճապաղեաք յաջողակ պատերազմաց. և ևս առաւել՝ աւագասէր ըղձիւքն, զորոյ թերեւս 'ի սկզբանն ինքն իսկ ոչ գիտէր զչափ և զսահման, բայց եզր՝ զթագաւորականն նկատէր փառս, առ որ պիտոյ համարէր լայնածաւալ երկիր նուաճեալ. բայց և չափաւորեալ իմն, զի մի ընդ հզօրագոյնսն ընդհարցի աշխարհակալս։ — Ի սոյին սակի գլխաւոր էր արեւմտեանն այն դրացի, սուլտանն Իկոնիոնի. և զի սա ոչ ըստ վաղեմի հայրենատուր ինչ ժառանգութեան տիրէր այնքան ընդարձակագոյն նահանգաց և աշխարհաց, այլ ըստ հարստահարութեան, ոչ ինչ խղճէր և Լեւոն կարճել զսահմանս նորին և զիւրն աճեցուցանել. մանաւանդ զի նա այլազգն՝ բռնաբարէր զվիճակս քրիստոնէից, զորս ինքն թափել նկրտէր՝ ոչ միայն աշխարհակալութեան՝ այլ և խաչակրութեան օրինօք։ Յաջողեցին Լեւոնի առ այս՝ ընտանի շփոթք բազմորդի սուլտանին՝ Խլիճ-արսլանի. յորմէ 'ի բաց կորզեաց զբովանդակ Իսաւրիա, այլ և զ[illegible] քաղաք. և յաջողակ բաղդիւն արշաւեալ երբեմն ընդ հիւսիս՝ մինչև 'ի Կեսարիա մայր քաղաքաց փոքուն Հայոց, և պաշարեալ մերձ յառումն, ստիպեաց զսուլտանն՝ տալ ընդ այնր և ընդ Սեւակլեայ ոսկի բազում, և դաշինս կռեալ ընդ նմա՝ դարձաւ յետս[1]։

Զ. Քանզի պաշտպան սոյին երբեմն հզօրն Սալահէտտին զբաղեալ էր յաշխարհն Ասորւոց, 'ի քակտել զտունս արեւմտեայցն անդր հաստատելոց, հինգ ամօք ևեթ զկնի պսակադրութեան Լեւոնի զգլխաւորն և զակնադիտակ զկենդրոն և զնպատակ ամենայն կալուածոց նոցին՝ զԵրուսաղէմ քաղաք, հանդերձ ամենայն սրբութեամբք նորին՝ յափշտակեալ (2 հոկտ. 1187), արկեալ ընդ զօրութեամբ բաղկի և զինու իւրոյ. յորմէ սարսեալ սասանեցաւ և 'ի սուգ եմուտ ամենայն քրիստոնէութիւն, մանաւանդ արեւմուտք, որ և շարժեցաւ 'ի Նոր խաչակրութիւն։ Այլ մինչ չև ընդհանուր հռչակեալ գուժի գերութեանն Երուսաղեմի, և երրորդ անգամ գումարեալ գնդից յաղթութիւն նորին, յառաջ խաղաց (1188-9) յաղթողն անխոնջ ընդ ծովեզերս Ասորւոց, մի առ մի նուաճելով զամենայն քաղաքս և բերդ քրիստոնէից. զերկուս միայն դժուարըմբռնելիս թողլով 'ի թիկանց, զՏիւրոս և զՏրապոլիս, և մերձենայր յերրորդն 'ի մեծն Անտիոք. զշրջակայս ապաւէնս ամրութեան սորին սակաւօրեայ պաշարմամբ ստիպելով 'ի նուաճումն, զԱփշունն և զԲուրզ[2], և զհռչակագոյնսն՝ Դարբսակ և Պաղրաս. այլ երկիւղ և վատութիւն Անտիոքացւոց՝ դաշամբք հաշտութեան կասեցուցին զաշխարհակալն անդիմակաց, որ հաւանօրէն՝ յետ նուաճելոյ զԱնտիոք՝ մտեալ էր 'ի սահմանս Լեւոնի. բայց արդ՝ զի խոնարհեցաւ առաջի իւր միակ մնացեալ իշխանն փռանկ, և զի լսէր զհամբաւ մեծի պատրաստութեան արեւմտեայց, և մերձ ընդ մերձ գալստեան զօրու նոցին 'ի կողմանս Տիւրոսի և Պտղոմայիդայ, ոչ միայն զայս ևս նուաճ ոչ ժամանեաց կոխել զսահմանս Հայկազնոյն, այլ և ընդարձակելոյ իսկ նոցին ետ պատճառս։ Քանզի անդէն 'ի մեկնել Սալահէտտինի աճապարանօք՝ 'ի պաշտպանութիւն երկրին՝ զոր այն ինչ թափեալ էր 'ի քրիստոնէից, Լեւոն՝ որպէս հաւ որսական դիտելով 'ի բարձանց լերանց իւրոց զգործս նորա և զնախճիր, խոյացեալ անկաւ 'ի վերայ կիսաքանդ բերդիցն երկոցուն, Պաղրասայ և Դարբսակայ, որք 'ի համար իշխանութեան Անտիոքացւոյն էին, և շինեալք Տաճարականացն և Հիւանդանոցին ասպետաց. և իբրև զերծեալս 'ի ձեռաց նոցին և կողոպուտս յայլազգեաց գրաւեաց ընդ իւրով իշխանութեամբ. զԴարբսակն՝ շնոր-

[1] Զբան հին յիշատակարանին՝ չափաւ կրկնէ Վահրամ.

« ԸզՍաւրիա աշխարհն առեալ,
ՅԱտալիա մեծըն հասեալ.
Հերակլիա եղև կալեալ,
Եւ ընդ գանձուց փոխանակեալ։
ԶԿեսարիա զօրօք պատեալ,
Եւ 'ի յառնուլըն մերձ ածեալ,
Ապա ոսկի բազում առեալ
Եւ ընդ սուլտանըն դաշն եդեալ »։

[2] Առաջինն Սահիուն կոչի յԱրաբաց, صهيون, և է մերձ 'ի Լաւոդիկէ, յարեւելից կուսէ. երկրորդն՝ Պուրզիէ, برزيه, առ Որոնդէս գետով, մերձագոյն յԱնտիոք։ Ընդ սոսին յիշէ և զայլ ամուր դղեակս՝ ժամանակակից կաթողիկոսն մեր Գրիգոր Տղայ, յՈղբս Երուսաղեմի.

« Այն որ Սեհունն է անուանին,
Նաև Կարմիրն անվանելին.
Եւս և ըզԲուրզըն անքընին,
Եւ ըզՊըքսան անմատչելին.
ԸզԿըլայն ամուր զանհըպելին,
Եւ որ զնովաւ շուրջ նստէին.
ԸզԲարն անուամբ զարմանալին՝
Որում ԸզՇուղըրն կոչէին ». և այլն։

Կարմիր՝ թուի կոչեցեալն յարեւմտեայց Chastel-Rouge, 'ի սահմանս Տրիպօլեայ. Պէքսա՝ թուի Bexa, մերձ յԱնտիոք. Բուրզն՝ Bursia, յահէկէ Որոնդէսի. ԸշՇուղր՝ Էշ-Շողր, (տես յէջ 407)։

հեաց կամ դարձոյց անդրէն յասպետս Հիւանդատանն, 'ի մտերիմ նիզակակիցսն իւր. զՊաղրաս՝ ինքեան սեփականեաց: Ժամանակակից դիպացս յիշատակագիր ոմն ազգային (յամի 1193), յայտ առնէ՝ զի ոչ միայն յԱնտիոք՝ այլ և 'ի վիճակ Լեւոնի դէմ եդեալ էր սուլտանին մխիլ, այլ ոչ վստահացաւ. այսպէս ասելով. « Գայ 'ի սահմանս Անտիոքու. և քակեալ աւերեաց զաշխարհն և զամուրս նորա...: Կամեցաւ մտանել յաշխարհն Կիլիկիոյ, նոյնպէս կարծելով գտանել (զՀայս) անարիս զոլ. քանզի գուայր իբրև զառիւծ զօրաւոր, որ և դառնայր իբրև զաղուէս տկար »: Իսկ Լեւոն՝ որ ըստ անուանն՝ երթալով երթայր և առիւծանայր, վասն այսպիսեաց պատկառամբար արիական գործոց՝ ոչ միայն յայտնեցաւ այլ և հռչակեցաւ այր քաջ և պատերազմող. և առ կենդանեաւն ընթեռնումք զգրեալսն 'ի ժամանակակցաց, « Ի Թագաւորութեանն Հայոց Լեւոնի՝ Յաղթողի և Բարեպաշտի ». յոր կոչումն՝ ոչ իբրև վարկպարազի պատիւ Թագաւորի, այլ իսկական գործ և արդիւն, կնքէր զնա և մեծն Լամբրոնեցի՝ 'ի յետին գրչութեան իւրում (յամի 1198), « Լեւոն որ յՌուբինեանց՝ Բարեպաշտ եւ Յաղթող ». որ և Մեծայաղթող ըստ կաթողիկոսին (Գր. Տղայ): Գրէր և այլ ոմն զգօն յիշատակագիր. « Տիրեաց մեծաւ յաղթութեամբ, որ զբազումս նուաճեաց զազգս և զաշխարհս, զմերս ընդարձակելով »: Իսկ աւարտող պատմագրութեան Միխայէլի Ասորւոց պատրիարքի, որ և ականատես թուի Լեւոնի, գրէ. « Արիագոյնն Լեւոն տիրեաց եօթանասուն և երկու բերդից. և ել անուն նորա ընդ ամենայն երկիր... և էր այնուհետև թագաւոր հօր և անուանի, և ահարկու 'ի վերայ օտար ազգացն՝ որ շուրջ էին զնովաւ, և դողային 'ի նմանէ »:

# ԴՐՈՒԱԳ Բ.

*Ա. Գալուստ Գ խաչակրաց, առաջնորդութեամբ Փրեդերիկայ Ա կայսեր. — Բ. Մահ սորա, եւ խորհուրդ թագաւորութեան Լեւոնի. — Գ. Ծանօթութիւն եւ դաշնակցութիւն Լեւոնի ընդ գլխաւորս խաչակրացն. — Դ. Սալահէտտին եւ Լեւոն:*

Ա. Ոչ էր անտեղեակ Լեւոն՝ մեծի և ահաւոր զօրութեան նորոյ արևելեան աշխարհակալին (Սալահէտտինի), և շատ իսկ հանճարեղ՝ առ 'ի ճանաչել զչափ իւր փոքրագոյն, զոր առաւարացուցանելն ջանայր, և չև էր հասեալ 'ի նպատակն. այլ ոչ այնքան իւրով ինչ զինու և զօրութեամբ ակն ունէր ճողոպրել 'ի հզօրէն, որքան յուսով նիզակակցութեան և օգնութեան այլոյ զօրաւորի, վեհագունին յարևմտեայ իշխեցողս այնր ժամանակի, և անձնամատոյց զլուխ կացելոյ նորոյ (Գ) խաչակրութեան. այսինքն է կայսերն Ալամանաց՝ Փրեդրիկայ Ա, Շիկամօրուս կոչեցելոյ (Barberousse). այն որ յաւուրս երիտասարդութեանն նորին պատրաստեալ էր գնալ ընդ Բ խաչակրաց՝ յազատութիւն Սրբոյ երկրին, և ոչ իսկ կասեալ 'ի պատճառս մահուան հօր իւրոյ (1147) երթեալ էր անդր, այլ և ձեռնունայն դարձ արարեալ ընդ այլոց վեհագոյն առաջնորդաց արշաւանին: Իբրև 'ի քառասուն ամաց հետէ թագաւորելով սորա՝ լցեալ էր յայսմ ժամանակի զարևմուտս հռչակաւ գործոց իւրոց քաղաքականաց և պատերազմականաց, պէսպէս բաղդիւ, և առաւել ևս հակառակութեամբն ընդ Քահանայապետին Հռովմայ և ընդ Իտալացիս, տենչիւ համաշխարհական ինքնակալութեան, համարելով զինքն օրինաւոր յաջորդ նախնի միապետ կայսերաց Հռովմայ. 'ի վերջոյ ուրեմն պարտեալ կամ պարտասեալ, զիջեալ և 'ի հաշտութիւն ընդ սոսա, և հասեալ 'ի ծերութիւն կարովի, փայլէր աւելօքն և արքունական փառօք: Ի միում ժամանակի՝ 'ի յետին քան ամս, երկոքին սոքա՝ Փրեդրիկ յարևմուտս, Սալահէտտին յարևելս՝ անհակառակ առաջին մեծք և հզօր անձինք էին, գերազանցեալք քան զյոգունս 'ի նախորդաց և 'ի յաջորդաց իւրեանց, 'ի քաջութեան, 'ի վարչութեան և յիշխանասիրութեան: Այս ամենայն յայտնի է պատմագրաց. այլ ոչ և այն, զի 'ի ժամանակի խոնարհելոյ արևու նոցին (մին † յամի 1190, միւսն 'ի 1193), ամբառնայր մերոյս Լեւոնի՝ իբրև յերկոցուն միջի, և նովիմբք բարեմասնութեամբք և կարողութեամբք ոգւոյ, մեծ ոմն 'ի միջի մեծաց եղանիւր, ինքն Լեւոնական այն Պարոն Հայոց. միայն չափաւորութեամբ թուոյ հպատակացն և տարածութեան երկրին կրսեր, այլ ոչ հանճարովն և արութեամբ. իսկ դիտմամբ նպատակին և 'ի նոյն հասանելով, ձգամբք և ճարտարութեամբ, ազնուագոյն ևս փառաւէր, և գերագունի կատարող գործոյ: — Վաղու իսկ այսմ նպատակի ուշ ունելով, և գիտելով՝ զի բռնաբար կամ անձամբ անձին շուք դնել՝ ոչ ինչ է պատուական, այլ որ վեհից վկայութեամբ և ընծայմամբ լիցի տուեալ, մանաւանդ ըստ աւատական օրինաց ժամանակին. և զի առ այս՝ հարկ

է հաւանեցուցանել զնոսա, նախ՝ արգեամբք, և բանական թագաւորութեան կազմածս և իշխանս ընդ ձեռամբ ունելով, բառ այնց ժամանակի օրինաց արևմտեայց, (զորոց հրահանգս ունանէր նորագոյնս քան զառաջականացն), և ապա թէ խնդիր առնել բանիւ. զուն գործեաց 'ի սկզբանն ընդարձակել զսահմանս հայրենի տէրութեանն, կալեալ անթողլի՝ զմիջոց լերանց Տաւրոսի և զծովուն, և տարածեալ զօրութեան ընդ արևմուտս՝ անդր քան զգետահոսին Կալիւկադնոսի, այն է Քարայնոյն Կիլիկիոյ, առ փոքր փոքր եհաս մինչև 'ի ծոցն Պամփիւլիոյ և 'ի մեծ քաղաքն Ատալիա, և անցեալ ընդ լեռնանկողմն, որպէս ասացաք, անդր քան զԻսաւրիա, ագուռեաց զՏիանա և զԱռակլի. հաւանեցուցեալ յայսմ



207. Փրեդերիկ Ա Շիկամօրուս, կայսր Ալամանաց.

կողմանէ՝ զոչ ակար տէրն Իկոնիոյ և փոքուն Ասիոյ, այլ յայնժամ ներքնեալ փասն տասնին հերձուածոց և բաժանմութեան որդւոց իւրոց, մինչև ապաւինել ումանց 'ի նոցանէ մինչև իսկ Լևոնի, առ զդէմ ունելոյ այլոցն եղբարց. իսկ ընդ արևելակողմն ձգեաց զբազուկ իւր մինչև յԱմանոս, և անցեալ ընդ դրունս նորին՝ նուաճեաց և զծերքադրոյս սահմանաղաւձս Ամանոսայ. զինքն ժամու թողեալ զ'ի սպառ թշնամեացն մերձնէ զատուերկան երկայթ մեծապանաց առ Բերեան։

Այդ մինչ զոյլչափ տարածութիւն երկրի և զգերիշխանութիւնն 'ի վերայ վաթսուն կամ եօթանասուն պարոնաց և բերդատեարց բաւական ինքեան գրեաց յընծայումն թագաւորութեան, — մանաւանդ զի ահա բարձա-խիկայէս թագաւորութիւն Փռանկացն յարևելից՝ կորուսեամբ Երուսաղեմի, (թէ և սոսկ անուամբ կոչէին այնպէս զաւհընկեցիկն). և զի և Կիպրոս ևս 'ի նոյն ներքևէր խորհուրդ թագակապութեան, — համարեցաւ թէ եհաս ինձ ժամ ամբառնալոյ զլուխ թագաւորալ՝ յերկրի ասա խնում, 'ի մէջի երից այլազգաց և այլակրօն մեծաց ազգապետութեանց, Յունաց, Թուրքաց և Փռանկաց. և 'ի բարձրագոյն զլուխ յևանոցս՝ 'ի կայսրն Ալամանաց կառույց զակն, 'ի նմանէ ընդունել զթագն, նմա եւթ լինել լին, անուամբ լոկով. և ոչ այսչափ միայն, այլ և յայլմէ և 'ի գերագոյնէ գլխոյ՝ ընդունել զնշան կամ զհաստատութիւն թագաւորութեան, 'ի տիեզերական հայրապետէն Հռոմայ, զորոյ ա՛ռ ունանէր աւանդին զգիր արևմտից և արշոնից հանուրց։ Եւ մինչ նա յայսմ խորհրդի մտաց էր, կանխեաց քան զգալուստ նորա Գ. Խաչակրաց՝ թուղթ մի Քահանայապետին Կղեմայ Գ., գրեալ 'ի վերջ կոյս 1189 ամի, առ Տէր՝ Լևոն, որպէս և առ կաթողիկոս մեր Գրիգոր Տղայ, համանման պատճէնիւ, յորդորելով զերկոսին ևս կարեկցութեան օժանդակել Արևմտեայց՝ պատրաստելոց 'ի զինել յազատութիւն Սրբոյ երկրին, զինուք, ընչիւք և անձամբք, և հաւատար նոցին ընդունել շնորհս հոգևորականս։ Արդ՝ կամ 'ի թղթոյ առաջ Քահանայապետին՝ յաւէտ խրախուսեալ Լևոնի, կամ մանաւանդ գիտելով զերկեւմու յառաջ նախրալութիւն Գուլիելմի արքեպիսկոպոսի Տիւրոսի [1] և զայլոց յարևելից յարևմուտս, 'ի թախանձ օգնութեան և ազատութեան Սրբոյ քաղաքին և արևելեան քրիստոնէից, բազում հաւանութեան է՝ թէ կանխեալ գրեալ էր և ինքն 'ի ձեռն հրեշտակաց՝ առ կայսրն մեծ, զորոյ լսէր պատրաստութիւն զաւրաւոն յուղևորս, խոստանալով զօրս յօժարականութիւն նմին՝ բառ իւրում ձեռին բաւականի, և խնդրելով ընդունել 'ի նմանէ զարքայական պսակ. որպէս զի և 'ի սպառ անկախ լիցի այնուհետև երկիրն իւր 'ի ձեռնադրութենէ Յունաց, հաւնէականն ինքնակալի ցուցանելով զինքն լին գոլ։ Հաստատէ զկարծիս մեր և զգան սոյն ժամանակակից յիշատակագիր, ասելով վասն կաթողիկոսին մերոյ, որ յանձնայնի համամիտ էր Լևոնի, եթէ «Առաքեալ 'ի հօգի իւր՝ մինչ
» աղօթից և արտասուաց աղաչանօք, խնդրէր փրկու-
» թիւն Սրբոյ քաղաքին և ժողովրդեանն Աստուծոյ.
» գրէր և ցուցանէր զանձնայն՝ թագաւորացն Յունաց և
» Հռոմայեցւոց, զի եթէ իցեն ինչ ձեռնհաս՝ եկեսցեն
» յօգնականութիւն քրիստոնէից »։ Յայտնապէս փաստահացեալ և կայսերն Ալամանաց, գրէր 'ի թղթին՝ յառաջ քան զգուն իւր, առ Սալահէտտին, (եթէ վաւերական իցէ թուղթն), թուելով զազգս և զիշխանս նիզակակիցս և հպատակս իւր, և զայս ինչ. « Չիմ կեղծաւորիս չգիտել,
» եթէ Հայք և այլ անթիւ աշխարհք՝ մերոյ իշխանու-
» թեանս են փնձակեալ մասն [2] »։ Ընդ այսու իմն՝ մարթ է հզնել յայս միտս և զբան մերոյ պատմչիս Վարդանայ, որպէս թէ գրեալ իցէ կայսեր յԻկոնիանէ առ կաթողիկոսն Գրիգոր, թէ « Ահա ունիմ թագ և զգեստ, զի օծ-
» ցես թագաւոր Հայոց զով ընտրես »։

1 Սա ինքն է անուանի և գերագոյն համարեալ 'ի պատմիչս Խաչակրաց, որ և ծնեալ իսկ էր յերկրի անդ Ասորւոց։

2 ... Numquid etiam scire dissimulas Armeniam et innumerabiles alias terras nostræ ditioni subjectas ?

Ցետ գրութեան թղթոյ Քահանայապետին՝ յուղի անկաւ Փրետրիկ կայսր, քան և աւելի ևս բիւրուք զօրաց, բազում մեծամեծ իշխանօք և եպիսկոպոսօք, հանդերձ համանուն որդւով իւրով. և ամսօրեայ չուաւորութեամբ անցեալ ընդ աշխարհն Ունգարաց, եմուտ յերկիր աբեղեան կայսեր, որ էր յայնմ ժամանակի Իսահակ Անգելոս, գաղտնի դաշնակից Սալահէտտինի, և կեղծաւոր բարեկամ Փրետրիկեայ. առ որ բազում ինչ խոստացեալ՝ փութացուցանէր անցանել յԱսիա. իսկ նորա 'ի վերայ հասեալ խորամանկութեան Բիւզանդացւոյն, ձմերեաց 'ի Թրակիա. և առեալ 'ի նմանէ պատանդս բազումս, յետ տօնի Զատկին (1190) էանց ընդ Եղլեսպոնտոս և ընդ նահանգս Յունաց, որք սկսան նեղել զեկսն. և անտուստ մխեցաւ 'ի վիճակ սուլտանին՝ Խլիճ-արսլանայ, ուր առաւել ևս և յայտնապէս եգիտ ընդդիմութիւն. վասն որոյ և բռնութեամբ զբռնութիւն վանեալ, և նախ զբանակ որդւոյ սուլտանին խորտակեալ, ապա զաթոռանիստ քաղաք նորին զմեծն Իկոնիոն՝ յարձակմամբ առեալ, խոնարհեցոյց զսուլտանն տալ ծանր ծանր տուգանս և պատանդս[1]. և այնպէս եբաց ճանապարհ ընդ գաւառս նորա 'ի հիւսիսոյ ընդ հարաւ արևելից, և ժամանեաց 'ի սահմանագլուխ երկրին Լեւոնի 'ի հիւսիսի արևմտից. առ որ և երիցս ասի գրեալ նորա յուղւոջն, այլ ոչ հասեալ թղթոցն և թղթաբերին առ Հայս, որպէս թուի վասն ունելոյ Թուրքաց և Թուրքմանաց զանցս ճանապարհացն, և խափանելոյ զհաղորդակցութիւն բանակին Գերմանացւոց ընդ քրիստոնէից. որով արդարև ոչ սակաւ վտանգ եհաս նոցա՝ 'ի տառապանաց անծանօթ և անվարուն վայրացն, և 'ի պակասութենէ պարենի՝ որ առաւել քան զսուր թշնամեացն նախճիրս գործէր, և ծախէր զբազմութիւն գնդից խաչակիր բանակին։

Բ. Ուշինչ ընդհատ 'ի նոցանէ՝ խափան եղեն և խորանարնակ Թուրքմանքն՝ դեսպանացն Հայոց, որք 'ի Պարոնէն և 'ի կաթողիկոսէն առ կայսր առաքեալք լինէին. քանզի 'ի լսել Լեւոնի զհամբաւ մերձենալոյ փրկութենարեր բանակին՝ փութացոյց զազնուագոյնն և զաջողագոյն անձն եկեղեցական դասուն՝ զՆերսէս Լամբրոնեցի, առաքել առ կաթողիկոսն 'ի Հռոմկլայ, որպէս զի ընկալեալ և 'ի նմանէ գիր և հրաւէրս, և զնա ինքն հրաւիրեալ, երթիցէ ապա առ կայսր։ Առեալ և Ներսէսի ընդ իւր զՅովհաննէս եպիսկոպոս, զեղբայրն իւր դաստիարակ, և զմիւս հռչակաւոր վարժապետն Սկեւռայ՝ զԳէորգ վարդապետ, և արս քան յաշխարհականաց, մինչ (որպէս թուի 'ի դարձին 'ի Հռոմկլայէ) յաւուրս Պենտեկոստէից, որ է յելս կոյս ամսեան մայիսի (1190), մերձ եղև 'ի սահմանս Մարաշայ, յարձակեցան 'ի վերայ նոցա Քուրդք և Թուրքմանք[2], կոտորեցին զամենայն ուղեկիցսն, բաց յերիցն յիշեալ վարդապետաց, զորս և զկարասիս գերեցին, ընդ որս և զինքնագիր նախօրինակ Պատարագամեկնիչ գրոց Սրբոյն, ընդ որ և յոյժ վշտացաւ, և ճողոպրեալ դարձաւ երկրորդ ընկերօքն առ Լեւոն։ Իսկ սորա լուեալ զմերձենալ կայսերն՝ կրկին փութացոյց զՆերսէս թղթովքն, թերևս և պատարագօք, ընդառաջել նմա. և Սրբոյն առեալ ընդ իւր միւսանգամ զգիտնական վարդապետն Գէորգ՝ էջ 'ի Տարսոն, նաւարկել 'ի Սելևկիա և հանդիպել ինքնակալին։ Բայց յառաջ քան զնա առաքեալ էր Լեւոնի այլ դեսպանս ընդ ցամաք, և զատ յայլոց՝ զերկոսին եղբարսն Կումորտիասս՝ զԿոստանդ և զՊաղտին, զորդիս Հեռեայ սեբաստոսի, որոց և սահմանք իշխանութեան և բերդորայք՝ էին 'ի գետահովտի անդ Կալիկադնոսի. ուրանօր գոյին և այլ բերդատեարք, յորոց ոմանք յիշի՝ թէպէտ և ոչ յանուանէ՝ տէրն Սիւկլեայ. որք և մի ըստ միոջէ պատարագաւ և պարենիւ ելանէին ընդ առաջ կայսեր, և զինակրօք՝ 'ի ծառայութիւն նմա. որպէս զի մինչ չև մխեալ նորա 'ի բուն սահմանս Սիսուանայ, յոր և չեղև ժաման, հինգ հազար Հայք խառնեցան 'ի բանակ նորին։ Այլ ընդ այլոյ և ստութեամբ պատմեն ատանօր Արաբացիք, դղժկամակս ցուցանել զՀայս՝ ընդ գալուստ Ալամանացն և ընդ անցս յերկիր իւրեանց. և զայս իբրու առ ահի կամ առ մտերմութեան Սալահէտտինայ. և մեծագոյն ևս ստայօղ թուղթ մի կարկատեալ են յանուն Գրիգորի որդւոյ Վասիլի, որպէս թէ կաթողիկոսին Գր. Տղայոյ, առ Սալահէտտին, լրտեսաբար ծանուցանելով նմա զորքանութիւն բանակին Ալամանաց, զարկածս կայսերն և զոր յետ այնր։ Մարթ էր մատնչի ուրուք Գրիգորի, կամ որպէս գրէ Պռհաէտտին պատմիչ նոցա, Գաթկայ (Գաւգուս) որդւոյ Գրիգորի, որդւոյ Վասլի, հրամանատարի Հռոմկլայ, գրել այդպիսի ինչ. այլ ամենևին հեռի և օտար է 'ի մտաց և 'ի գրչէ կաթողիկոսին և Լեւոնի, և ամենայն ողջամիտ ծանօթից նոցին։ Եւ քանզի կարկատուն գրուածն այն երկմտեցոյց և զարևմտեայս ոմանս նոր պատմիչս՝ ընդ հայրապետն մեր, անգիտակք գոլով և անփորձք ոգւոյ և հանճարոյ սորին, լուիցեն զոր ինչ ոմն 'ի մերայոց ժամանակակցաց նոյին գրէ՝ ընդ վերոյ կարգեալ բանսն որ զկաթողիկոսէն, կանխելով ասել և զայս. « Սուրբ Գրիգորիս՝ որ ունէր զաթոռ Հայրա-

[1] Գեղեցիկ համառօտէ Ս. Լամբրոնեցին զուղևորութիւն կայսերն. « Եկն և թագաւորն Ալամանաց Փիլորիք, որ էր ինքնակալ » Հռոմայ, և մեծ քան զամենայն թագաւորս. և սա ոչ ծովով՝ այլ » ընդ ցամաքն արար ճանապարհ. անթիւ զօրօք եմուտ յՈւնկաս, » և եկեալ ձմերեաց 'ի Մակեդոնիա, 'ի Փիլիպուպօլիս. և 'ի սանի » պասեքին անց ընդ ծովն Աւետեաց?, և ծանր տարմամբ հերձեալ » զբանակս անթիւս խորանարնակ Թուրքմանացն, էջ զօրօքն հուպ » քաղաքին Սէլէֆի Սաւրացւոց »։ Պարահայեաց աչքն սրբենիք՝ որ յուսով խայտային 'ի գրեւն զայսոսիկ, յետ ութ ամաց՝ մերձ 'ի փակելն առ լոյս արեգականս, յարտասուս լուծեալ՝ զայս կնքեցին յետին տողս որոտալով. « Վարեցաք զաշխարհն 'ի ժամանակիս յո- » րում էանց տորին վայելչութիւն. քանզի անկեալ աչաց մերոց սուրբ » և աստուածակոխ քաղաքն Երուսաղէմ՝ յափշտակեցաւ 'ի սպա- » սաւորութենէ քրիստոնէից՝ որով Իսմայէլացւոցն, 'ի ՈԼՋ Թուին » Հայոց. 'ի վերայ որոյ՝ բազում արեանց հեղմունք... Լատինացւոց » բազմացեղ ազգաց, որք դաս դաս առագաստեալ նաւուք և քաջապինդ հաւատով և սրտաջան արութեամբ՝ հասին 'ի Պաղեստին. և » անդ դիակնացեալք շուրջ զքաղաքաւն, ըստ Երգոյն, և ոչ ոք էր որ » թաղէր. և մեք մնացաք նախատինս դրացեաց մերոց »։ Այլ. բամբ է, յարէ անընդմէջ 'ի սոյն բանս՝ զազդեցեալն 'ի թերաքամեալ աչկունսն՝ նոր իմն նշոյլ լուսոյ ընտանի ճրագի. « Մինչև 'ի լրումն » թուիս ՈԽԷ, յորում ամի վերապատուեցաւ թագաւոր Հայոց Լեւոն՝ որ յՈռոբինեանց, բարեպաշտ և յաղթող Աստուծով »։

[2] Լամբրոնեցին 'ի յիշատակարանի Պատարագամատուցին Թուրք և Մարք կոչէ զաստատակն. Սամուէլ Անեցի 'ի յիշատակարանի Սաղմոսամեկնչին՝ « Խորանարնակ ազգն կոմայէլի »։

» պետութեան Սրբոյն Գրիգորի… ըստ տուեցելոյ նմա » յԱստուծոյ ամենաշնորհ իմաստութեանն՝ խրատիւ և » զօրացուցանիւր զբազմորմ և զզօրս Կիլիկեցւոց, ընդդէմ » կալ… չարութեանն. որ և ոչ կարաց ձեռն արկանել » 'ի նոսա »: — Արդ երկոքին ազգապետքս Հայոց՝ Պարոնն Լեւոն և կաթողիկոսն Գրիգոր, ըստ արժանի գահուց իւրեանց՝ իւրաքանչիւր պաշտօնէիւք հանդերձեցան 'ի Սիս, զհետ Լամբրունեցւոյն, նովաւ հանդերձ պատահել և ընդունել զինքնակալն մեծ, յառաջագոյն ծանուցեալ նմա գրով զայս, որպէս թուի 'ի ձեռն նախառաքելոցն Կամսրտիասանց. և հասեալք, (ըստ միոյ 'ի պատմչաց արևմտեայց) 'ի սահմանս քաղաքին Սելեւկիոյ, ոչ կարացին անցանել ընդ կամուրջն, կամ ոչ կամեցան խափանել զանցս յոգնախուռն գնդից կայսերն, զի այն էր արահետ ճանապարհ. և դադարեալ 'ի պատշաճ տեղւոջ միային դէպ ժամու: Հեղինակ թղթոյն արդ յիշեցելոյ՝ զՀերուլ[1] (Հաղէմ գրելով) զմի առէ առաքեալ 'ի Լեւոնէ դեսպան. բայց արևմտեայք զԿամսրտիասս միայն յիշեն. և առեն մատուցեալ սոցա առ մարաջախտըն Ալամանաց՝ ծանուցանել, զի եկեալ են 'ի դիմաց Լեւոնի, անցուցանել զկայսր և զբանակն՝ յերկիր իւր. զնոյն և առ կայսր ինքն ասացին՝ յորժամ մուծան 'ի խորան նորին: Ցոյժ ուրախ եղև Փրետրիկ ընդ հրաւէրն և ընդ պատրաստութիւն. զոր լուեալ զօրացն, ասէ Վարդան, լցին 'ի խնդութենէն. ըստ բանից սորա՝ Թերևս յայսմ նուագի պատասխանէր թղթոյ կաթողիկոսին, խոստմամբ թագաւորութեան Լեւոնի, զոր և ոսկի կնքով վաւերացուցեալ՝ վկայէ Լամբրունեցի. յաւելու Վարդան, թէ գրեալ էր կայսեր և զայս, թէ « Ասոր 'ի » հինգ ամ՝ քո հրամանաւ կամիմ բանալ անդաստան Հա- » յոց, և ապա գնամ յերկիրն իմ ». թուի առել զամս հինգ կամեցեալ դեգերել յայս կողմանս և տալ գործել իւրոյոց զերկիր Հայոց, մինչև 'ի դարձ իւրեանց և յելանելն յերկրէ անտի. և դարձեալ, եթէ գրէր՝ թէ մեծ իմն ուխտ էր 'ի սրտին, այլ ոչ կամէր առել մինչև տեսցէ զՊարոնն Հայոց և զկաթողիկոս. հաւանօրէն՝ պատիւ կամ իշխանութիւն ինչ գերագոյն, կամ զաւառս կամէր յաւելուլ 'ի տէրութիւն Հայոց. եթէ ստոյգ իցէ առացուածն, որ մնաց թաքուն 'ի մեծի սրտի անդ կայսեր. որում՝ ոչ թէ հինգ ամ մնայր կեալ և գործել, այլ և ոչ հինգ օր: — Քանզի յութ ամսեան յունիսի եղև հանդիպումն նմա դեսպանացն Հայոց, և յաւուրն երրորդի (10 յունիսի) աշխարհածանօթ աղետաբեր վախճան նորին. զի տեսեալ նորա եթէ յերկարէ յոյժ անցք զօրացն ընդ կամուրջն Սելեւկիոյ, յոր ժամանեալ էր և ինքն, եհարց զդեսպանս Հայոց, թէ չգուցէ՞ և այլ կարճոյ ճանապարհ. և նոքա ասեն. Գոյ ընդ հուն գետոյս, և թէ կամք իցեն արքայի՝ անցցուք մեք յառաջ և ցուցցուք զհետսն: Հրամայեաց անցանել և գտանել, և արարին այնպէս. և իբրև վստահ եղև՝ պատուիրեաց անցուցանել նախ զորդի իւր Փրետրիկ՝ զտէրն Սուապայ. զոր և խոյոյն անցուցին նուիրակքն Հայոց, և դարձան անդրէն յայսկոյս, մինչդեռ կայսր զբօսնոյր 'ի խնջոյս, 'ի վայելուչ իմն տեղւոջ առ. գետեզերբն, կամ ըստ այլոց՝ յորս ելեալ հրաւիրմամբ իշխանացն Հայոց, թերևս քաղաքապետին Սելեւկիոյ[2]. յետ այնր կամեցաւ և ինքն՝ հեծեալ յերիվար իւր՝ անցանել, նախագնաց առաջնորդութեամբ նոցին երկուց հարազատացն Կամսրտիասաց, չուրջ պատեալ յիւրայոցն յաջմէ և յահեկէ և 'ի թիկանց. յիշելով թերևս զխիզախական խայտանս երիտասարդութեանն, որով անցանէրն և դառնայր ընդ Ադեսիս գետ (յամի 1158) յարշաւելն ձեռն արկանել 'ի վերայ Վերոնա քաղաքի, կամ յանդըգնագոյն ևս օրինակաւ ընդ յորդաջուրն Ադդա[3]. այլ արդ 'ի հասանել 'ի մէջ գետոյն Կալիկադնեայ՝ խրտեաւ կամ գայթեաց երիվարն, և ընկէց զվերելեակ կայսրն 'ի ջուրն. և զի քրտնեալ էր և 'ի տօթաժամու, մինչ չև բարձեալ զնա մերձ եղելոցն՝ բացան երակք նորա, առեն ոմանք, և կամ խոյոյն ջրահեղձիկ եղև, ոչ կարելով առ ծերութեանն[4] փութով թօթափիլ և կանգնիլ. իսկ այլք պէսպէս պատմեն զօրինակ մտիցն 'ի ջուր և զպատահարն. կէսք՝ անդէն 'ի ջրին, և այլք յետ հանելոյ 'ի ցամաքն՝ ասեն մեռեալ. այլ և ասացեալ, « Օրհնեալ ես Աստուած, որ կամեցար՝ զի որպէս ջրով վերածնայ, ջրով և մեռայց. և ոչ է ինձ ընդ այս զեղջ ». և ոմանք՝ թէ և Մարգրաւտոյ կոմս Կամպանիոյ՝ կամելով զերծուցանել զկայսր՝ ընդ նմին ջրասոյզ եղև. չասք ևս, ընդ որս և մերս Ն. Լամբրունեցի ոչ սակի անցանել՝ այլ լուանալ առեն 'ի գետն կամեցեալ, և ոչ բաւելով կալ ընդդէմ յորձանաց ջուրցն՝ հեղձեալ, վասն ոչ գտանելոյ մերձաւորի՝ փրկել զնա. « Եւ մեր, ասէ Սուրբն, տրտմութեամբ պատահեալ ե- » պիսկոպոսացն՝ որք գային զկնի նորա, և որդւոյ նո- » րին և զօրացն, դարձաք 'ի Տարսոն ». անդր զհետ ածելով ապա փոխանակ կենդանի սրտին՝ զփորոտիսն, հանեալ 'ի զմռսել մարմնոյն, և թաղեալ զայն Հայոց՝ աւանդ տխուր սիրոյ, զոսկերսն զիակնն անցուցին տխրագոյն յուղարկմամբ ընդ Հայս՝ յԱնտիոք, և անտի այլուր. իսկ տեղի հուսկ հանգստեան նորին՝ տակաւին ընդ երկբայութեամբ է, և արտաքոյ մերոյ քննութեան: Բայց աներկբայ հաւատալի է խոստովանութիւն Ս. Լամբրունեցւոյն՝ վասն տրտմութեան իւր և նմանեացն, և առաւել ևս Լեւոնի, որ յայն ինչ ըմբռնելն զ'ի վաղուց բաղձացեալ պսակն արքունի՝ 'ի յեղակարծումն վայրկենի վրիպեալ լինէր, թէպէտ և ոչ անյոյս, որպէս և ոչ ինքն Ներսէս. որ և 'ի նմին ժամանակի հիւր ածելով յապարանս թեմին իւրոյ՝ զմի յիշխանափառ եկեղեցականաց կայսեր, զեպիսկոպոս Մինստէր քաղաքի, Հերման անուն, « որ » ունէր իւր զաս ձիավորի զկնի՝ հազար հեծեալ », առեալ 'ի նմանէ զկարգ Թագաւորօրհնէից՝ յեղոյր 'ի հայ՝

1 Եթէ Լեւոնի առաքեալ էր զՀեթում՝ 'ի դէպ է թէ Սամնեցին էր՝ փեսայ իւր, որէշ 'ի Կամսրտիասեանց. այլ մարթ է թէ և տէրն Լամբրոնի իցէ, որ դեռ ևս ազատ էր, իւրովին գնացեալ 'ի պատիւ կայսեր, որպէս և այլ բերդատեարք կողմանցն:

2 Mentre ch' egli colà si riposava, rinfrescando dalle passate fatiche il suo esercito, venne invitato dal Signor degli Armeni alle cacce. — Cosimo Bartoli, *Vita di Federico Barbarossa.*

3 Ցարշաւելն 'ի նուաճումն Մեդիոլանու՝ հասեալ յեզր գետոյն (Ադդա ըստ իտալացւոց), և ոչ գտեալ նաւակ կամ կամուրջ՝ կաւեցաւ ոտիւք 'ի գերան մի, և երկուատեր գայիանօք ղեկավարեալ կշռակի՝ եանց յայնկոյս:

4 Համարի լինել ամաց եօթանասնից կամ սուղ աւելի:

հաւանութեամբ կաթողիկոսին. որք և 'ի գումարել կայսրորդւոյն և աւագանւոյ նորին առ վայր մի' 'ի նմին մեծի քաղաքի 'ի Տարսոն, խնդրեցին կատարել զխոստումն վաւերականի հօր իւրոյ' թագաւորեցուցանել զԼեւոն. և նոքա' ասէ մերս թարգման, « խորհեցան, և ոչ կարացին » յանձն առնուլ զգործն, յորժամ ինքնակալն բարձաւ 'ի » միջոյ. այլ իջին յԱնտիոք և անտի 'ի Պաղեստին [1] »: Քանզի և կայսրորդին' Փրետրիկ' ոչ էր ժառանգն և անդրանիկ, այլ Ենրիկն որ տեղապահ կայր 'ի Գերմանիա:

Գ. Սակայն Լեւոնի ելեալ ընդ առաջ կրսերոյն Փրետրիկայ' էած 'ի Տարսոն, և անտի 'ի Մամեստիա, ուր հիւանդացաւ դուքսն, և յայց եկ նմա կաթողիկոսն Գրիգոր. և կազդուրեալ յետ սակաւ աւուրց' նաւեաց յԱնտիոք, և անտի ընդ դոյզն մնացորդաց երբեմն բազմագումար բանակին' գնաց պնդել զերկարեալ պաշարումն Պտղոմայիդայ (Աքքեա) քաղաքի, ուր և մեռանի յետ ամսոց ինչ: Մնայր Լեւոնի ակն ունել պատեհագոյն ժամանակի. իսկ զարդիս գուն գործեալ յաջս մտանել խաչազգեցիցն դաշնակցաց, ոչ լոկ պարենիւ և մարտիկ գնդաւ օժանդակեաց նոցա, այլ և անձամբ երթայր յողջոյն թագաւորացն' Փռանկաց (Փիլիպպոսի Բ Օգոստեայ) և Անգղիոյ (Հռիկկարդոսի), յանկուցանել և զնոսա յինքն և յազգ իւր. նա և նիզակակից եղև երկրորդին, Առիւծասիրտն անուանելոյ քաջ և յանդուգն' այլ և անողորմն Անգղիացւոյն, երթալով 'ի Կիպրոս կղզի, և վանելով ընդ նմա [2] զկուսակալն Սահակ Կոմնենոս, որոյ մերժեալ էր զխաչակիրսն մազապուրծ անկեալս 'ի մրրկէ' 'ի կղզի անդր. վասն որոյ և սրտմտեալ Հռիկկարդեայ' զնա ինքն մերժեաց յամենայն իշխանութենէ և յազատութենէ. և նուաճեալ զկղզին' եթող 'ի կի Լիւզինեան, որ և եղև նախնակիզքն հարստութեան թագաւորաց Կիպրոսի. և անդ' 'ի կատարել մեծահանդէս չքով զհարսանիս իւր ընդ Բերենգերեայ բամբշան Նաւարրայ' (12 մայ. 1191), ընդ իշխանազունս հրաւիրեալս գտանէր և Լեւոն [3]. և ընկալեալ պարգևս և աւարամասն յանկածէն Կոմնենի' դարձ առնէր յերկիր իւր:

Ի դէպ է կարծել յայսմ նուագի դարձին' [4] 'ի ծովու հանդիպել նմա վտանգի, և իւր ըստ հանապազ զգաստութեանն' ճողոպրել յաղթողաբար. քանզի « Լուեալ » զայն թշնամեայն նորա' որք 'ի ցամաքի ոչ ինչ կարէին » ազդել նմա, պատրաստեցին նաւս բազումս' զի 'ի ծովու » նենգեսցեն զնա. և լուեալ զայն արքայն Լեւոնի' զօր» ձաւ անոթէն յետս 'ի Կիպրոս... և առ իւր նաւս պատերազմականս, և եկեալ 'ի դարանն' որ գործեալ էր » նմա նաւաց բազմաց' (անշուշտ 'ի խորշ մի ծովափանցն)... ծանեաւ թէ յորում նաւուցն իցէ գլխաւորն. եհար զնա արագաթև նաւով, և ջրասոյզ արար զամենեսեան, և մնացեալ նաւքն փախեան. և » անկաւ ահ նորա 'ի վերայ ամենեցուն, հեռաւորաց և » մերձաւորաց »:

Թէպէտ և ոչ յիշեն պատմիչք մեր կամ օտարք, այլ հաւանին և այժմու քննաբանք [5], զի ընդ երկոսին թագաւորսն' Փռանկաց և Անգղիացւոց' գնաց և մերս Լեւոն յօգնութիւն' 'ի պաշարման Պտղոմայիդայ, (ուր եհաս Փիլիպպոս 'ի 20 ապրիլի, Հռիկկարդ յ'8 յունիսի, 1191): Հին քերթող մի գերմանացի' 'ի վիպասանութեան խաչակրութեան Լուդվիկի' դքսին Թուրինկիոյ, ընդ պաշարողս Պտղոմայիդայ և ընդ գոհացողս վասն առմանն, յետ թագաւորաց Ալամանաց, Երուսաղեմի և Կիպրոսի' յիշէ և զԼեւոն, մերթ Leo կոչելով մերթ Lowe, թագաւոր, և այրաքաջ և գովանի 'ի մարտի [6]: Բայց եթէ անձամբ ոչ' աներկբայ է իւրայոցն զինուորակցութիւն և հաղորդութիւն, իբր երկամեայ յերկարեալ և բազմայեղանակ այնր նշանաւոր պաշարման, յորում յերկուց կողմանց' 'ի քրիստոնէից և յայլազգեաց' բազում գործք քաջութեան և ոչ սակաւ կոտորածք եղեն. փոփոխեցան առաջնորդք առաջնոցն, այլ յետնոցս միշտ գլուխ և չահատակ կայր կորովին այն և հռչակեալ Սալահէտտին. սակայն ուր ուրեմն 'ի ձանձրանալ և թուլանալ պաշարելոցն' զիջաւ լքանել զամուր զայն քաղաք (13 յուլ. 1191), որպէս և յետոյ (յամսեան սեպտեմբերի, 1192) դաշամբք թողուլ 'ի քրիստոնեայս' զմեծ մասն ծովեզերաց երկրին Ասորւոց, առնել հաշտութիւն ընդ իշխանս և տեարս նոցին, այլ և առանձինն ընդ Անտիոքացիս և Տրիպօլեցիս, որք միայն ազատ մնացեալ էին 'ի բռնութենէ ձեռին նորա, և զինադուլ միայն արարեալ էր ընդ նոսա: Յետ սակաւուց մեկնեցաւ Հռիկկարդ' ահ մեծ թողեալ 'ի վերայ այլազգեացն, և անուն ոչ բարի 'ի քրիստոնեայս. զի ոչ համբերեաց երկարել զմարտն և թափել յայլազգենից զՔաղաքն սուրբ, վասն որոյ այս ամենայն խաչակրութիւնք և գործք լինէին. այլ նա զքեռորդի իւր Ենրիկ դուքս Շամբանեայ' ընծայեցոյց յանուանեալ թագաւորութիւն Երուսաղեմի. քանզի առեալ էր սորա 'ի կին զհիգապել' ժառանգ այնր թագաւորութեան [7], (զայրին Կոնրադայ Մոնֆէրրադայ): — Թէ յայսմ նուագի և թէ

1 « Իսկ ես (յաւելու Լամբրոնեցին) զթարգմանեալ Օրհնութիւն » թագաւորիս' ոչ կամեցայ աղաւաղել. եդի ընդ նախ թարգմանեալ » Կորէփս (Հռոմայ եկեղեցւոյն), վերատին յարմարմամբ »:

2 Մաղաքի, Ա. 8. ըստ անգղիացի պատմչաց: — Հեթում պատմիչ համառօտէ 'ի Ժամանակագրութեանն. « Ֆիլիպ ռէ տէ Ֆրանցն » և ռէ Ջառլ թագաւոր Անկլիզաց, անցին յայսկոյս ծովու, և պաշարեցին զԱքա. որ և 'ի գալն Անկլիզաց' էառ զկղզին Կիպրոսի 'ի » Կիռ Սահակ տուկէն »:

3 Մարինոյ Սանուտոյ, Բ. 277:

4 Կիրակոս պատմիչ որ յիշէ զայս' կարծեցուցանէ յետ բազում ամաց հանդիպեալ իրացս:

5 Յայս կարծիս երևի և Մաղաքի (Ա. 141). Il avait vécu au milieu d' eux (Barons latins) pendant le siége de Saint-Jean d' Acre, lors du voyage des rois de France et d' Angleterre.

6 Un Kunic Lewe der menliche
Von *Ubia* der lobeliche,
In strite.

Նշանաւոր է մականուն կամ տեղին Լեւոնի' Ուբիա, որ 'ի տաղդ, ըստ որում և այլուր որոշակի եա ասէ.

Kunic Leo von *Ubia*,
Ouch der von Armenia.

եթէ չիցէ ինչ շփոթեալ ընդ անուան Ռուբինէ. զի յառաջին ամս պայազատութեան Լեւոնի' տակաւին յանուն Ռուբինի կոչէր երկիրն Սիսուանայ:

7 Իզապել դուստր է Գ Պալտինի թագաւորի, որոյ հանին հայրենի' դուստր էր Գաբրիէլի Հայ իշխանի Մելիտինեայ. իսկ մայրն Իզապելի Ագնէս' թոռն է Ժոսլէնի կոմսի Եդեսիոյ և դստեր Թորոսի Պարոնի Կուստանդեայ: (Տես յէջ 47-8 Տեղագրութեանս):

յետոյ՝ յայտ է մտերմութիւն Լեւոնի և ընդ սմա, որպէս ընդ ամենայն ականաւոր արևմտեայց եկելոց յարևելս, և որ՝ յետ սակաւուց, միջնորդ հաշտութեան եղև ընդ նա և ընդ տէրն Անտիոքայ, որպէս ցուցցի յառաջիկայդ։

Դ. Ի դադարել հնգամեայ խաղմին Պաղեստինոյ՝ որ ընդ սուլտանին Եգիպտոսի և ընդ քրիստոնեայս, դարձան սոքա յանձանձել զիւրաքանչիւր վիճակս, և նա զիւր ընդարձակ ինքնակալութիւնն, բաժանելով յեղբարսն, յորդիս և յեղբօրորդիս իւր. ըստ այսմ և մերս Լեւոն, զիւրն հոգալով ընդարձակել, յապահովել և երևելի առնել։ Ի դաշինս հաշտութեան հակառակամարտիցն՝ չիք ինչ յիշատակ վասն սորա, զի ոչ էր 'ի համարի արևմտեայ զաղթականացն. այլ անմարթ էր վրիպել նորա յաչաց գոռոզ սուլտանին, կամ չերևել պարտաւոր՝ իբրև նիզակակից թշնամեաց իւրոց, և առաւել վասն ոգւոյ և ջանից աւագաւորութեանն. զայս քաջ զգայր որ նման նմին կրէր ոգի տիրական, և զամենայն շուրջակայ բարձրացեալս խոնարհեցուցանել և ընդ ձեռամբ իւրով հարթ հաւասար առնել նկրտէր։ Ծանօթ էին նմա որ ինչ արար Լեւոն ընդ Ռուստամ և ընդ նմանիսն, և եթէ որպէս արկ զձեռն իւր 'ի վերայ սահմանաց օտարաց՝ զծովեզերբքն, ընդ արևմուտս և ընդ արևելս, և նուաճումն բերդորայիցն՝ որ 'ի ստորոտս Ամանոսի, առ հարկի ժամուն լքելոց յինքենէ, յորոց վերայ առաւել իրաւունս համարէր ունել Բրինձն Անտիոքայ. և այժմու խլրտմունք նորին և անուղղակի միջամտութիւնն յիրս դրակցացն Իկոնիացւոց։ Քանզի 'ի նմին իսկ ժամանակի՝ ծեր սուլտանն Խլիճ-Արսլան՝ բաժանէր զընդարձակ տէրութիւնն՝ ընդ տասնեսին որդիս իւր, հանգոյն ինքեան իշխանասէրս, նախանձոտս և հակառակորդս իրերաց. և մինչ չև յաջողեալ հանդարտել զնոսա՝ մեռանէր, գլխաւոր ամենեցուն և ժառանգ աթոռոյն կացուցեալ զԽութպէտտին, որում կին ածեալ էր զդուստր Սալահէտտինի, պաշտատական ընդունելով հազար բիզանդ սառակին։ Անդէն ընդ պսակազատելն՝ սկսաւ սա ոգորել ընդ եղբարսն. զրաւեաց զՄելիտինէ՝ զբաժին Մուէզզէտտին Գայսար կամ Ջէսար-շահ եղբօր իւրոյ, որ հալածեալ անկաւ առ Սալահէտտին. այլ և ինքն Խութպէտտին հալածեցաւ 'ի Ռուգնէտտին Սիւլէյման (Ղըյասէտտին) եղբօրէն, որ յառաջն տէր էր Եւդոկիոյ, և արդ բռնացաւ 'ի վերայ հայրենի աթոռոյն, թողլով նախորդին իւրում զԱմասիան, յորմէ հալածեաց զմիւս ևս եղբայրն՝ զՔէյխոսրու. յետինս այս զառաջինն փախուցեալ անկաւ 'ի Բերիա, ուր սն ինչ մեծ կողմնակալ առաքեալ էր Սալահէտտին զորդի իւր Տահէր. ապա թողեալ զսա՝ ապաւինեցաւ 'ի մերս Լեւոն, և 'ի սմանէ ևս հրաժարեալ չոգաւ 'ի Տրապիզոն և անտի 'ի Կ. Պօլիս, ուր և եկաց զամս տասն, մինչև մեռաւ եղբայրն բռնակալ, և դարձաւ նուաճեաց զաթոռ նորա։ Բայց մինչ կայրն դեռ 'ի Սիսուան՝ ընկալաւ 'ի նմանէ Լեւոն բաղդիւ կամ ճարտարութեամբ իւրով զմասն ինչ կալուածոց նորին և զբերդիկ՝ որ յերկրին Ալպստանայ. որով անդրաձգեաց զսահմանս Կիլիկիոյ և ընդ հիւսիսի արևելից զԱնտիտաւրոս։ Այսպիսեաց համարձակ գործառնութեամբք, մանաւանդ հակառակութեամբ եղբարցն Իկոնիացւոց, դիմելով միոյն առ ինքն՝ միւսոյն առ Սալահէտտին, հաւասարորդ իմն սմա թուէր համարել Լեւոն, և խոչ ընդ ակն լինէր։ Դարձեալ, զի և յարևելից կուսէ զրաւեալ էր, ըստ նախ ասացելոցս, զՊաղրաս և զԴարպասակ և զորս առ նոքօք, և խոնարհագոյն ևս զծովեզերսն մինչև 'ի Հռոսոս, որ բնական բաժինք համարէին Պեմունդի Բրնձին Անտիոքայ, զչարեալ սորա՝ այլ և ոչ իշխելով 'ի վէգ գալ ընդ Լեւոնի, իբրև լուաւ զգալուստ Սալահէտտինի 'ի Պէրութ՝ չոգաւ առ նա յողջոյն, և 'ի խնդրել զտեղիս ինչ սահմանաց իշխանութեան իւրոյ Անտիոքայ՝ գրաւեալս յօտարէ, որպէս յիշեն պատմիչք վարուց մեծի սուլտանին, առանց յիշատակելոյ զանուն Լեւոնի, և ոչ զկարևորագոյնն ևս որ յետ այնր դէպս, զոր ուսանիմք 'ի մերոյս կիլիկեան պատմչէ։

Շատ էր այս ամենայն 'ի դրդել զոգի հզօրին այնորիկ 'ի վերայ Լեւոնի, որ 'ի միջի մեծագունից իշխանաց ահարեկ նուաճելոց՝ անահ իմն ճողոպրել թուէր. և զի մի՛ որպէս ջանայրն՝ արդարև մեծասցի, կամ համարեսցի ազատ ոմն զոլ յամենեցուն նուաճողէն, պատգամ առաքեաց առ նա Սալահէտտին, 'ի բաց թողուլ ոչ միայն զոր յօտարացն էր կորզեալ, այլ և զոր բնական ժառանգութեամբ ունէր. յանձնել 'ի սուլտանն զերկիր իւր, և երթալ կալ ազատօրէն ուր և կամիցի։ Զի այսպէս և այլոց տերանց՝ սովոր էր սուլտանն ասել և առնել. իսկ թշնամեացն խոնարհելոց՝ անյիշաչար եղեալ՝ պարգևս իսկ տայր և մեծարէր։ Ցետին գործ կամ հրաման իշխանութեան էր այս՝ մեծազօրին, որ զամս քսան գրեաթէ անընդհատ յաղթութեամբ՝ յԵգիպտոսէ մինչև 'ի սահմանս Նփնուէի՝ նուաճեալ կալաւ զերկիր, եբեկ զզօրութիւն քրիստոնէից յարևելս, և սարսեցոյց զարևմուտս ահիւ անուան իւրոյ։ Մեծագոյն և Լեւոնի տագնապ և դժնդակագոյն օրհաս էր կենաց իւրոց, այլ և օրահաս տէրութեան և բաղդի, և իւր և որոց ընդ իւրև վիճակելոց՝ համազգեացն և օտարաց։ Ոչ այնքան թերևս Սալահէտտին զԼեւոն ճանաչէր, որքան սա զՍալահէտտին, անդստին 'ի ժամանակէն՝ յորում հանգուցեալ պատգամաւ կասեցոյց նա զեղբայր իւր Ռուբէն 'ի ձեռներիցութենէ. և գիջաւ միայն յողք և յարագ հնազանդել սորին. իսկ յոր յետ այնր յերկոտասան ամս՝ իբրև աչօք բացօք դիտէր և տեսանէր Լեւոն զամ ըստ ամէ աճել զօրանալ յօրանալ սուլտանին, և անյաղթելի ոմն նահատակ հանդիսանալ 'ի մէջ երկրի։ Ջեն ապա զարմանք՝ եթէ սոսկացեալ զարհուրէր յանձին իւրում. ոչ զի աճեդք և սպառնալիքք էին պատգամքն, այլ զի այնպիսիք լինելոց էին՝ եթէ ոչ փութայր և ինքն նուաստանալ զիջանել հանգոյն եղբօր իւրոյ։ Բայց ոչ Ռուբինի թուլատարր սիրտ էր 'ի լանջս իւր, այլ հանգունակ հօրն և հօրեղբարց և համանուան հաւուն, (Ստեփաննեայ, Թորոսի Բ և Լեւոնի). — եթէ իշխէին արդեօք և սոքա՝ ընդդէմ այնպիսումն աշխարհակալ հզօրի կքրել, և չամբշութեամբ 'ի պայքար մտանել. — Նա մանաւանդ մինչ անկասկած թուէր, եթէ որ հաւանի 'ի կամս նորա՝ ոչ վնասի յանձին։ Այլ ո՛ւր այնուհետև միայն Լեւոնի այնքան ամաց երկունքն և բարձրաձիգ խորհուրդք. ո՛ւր թագն ըղ-

ձացեալ և արքայութիւնն տարածեալ, (յուսովն՝ թերևս անդրագոյն քան զսահմանս յոր եհասն յետոյ)․ յինչ յանգէին այնքան վաստակք, յաղթութիւնք և խորագէտ հնարք, և կայսերական խոստմունք ոսկի կնքօք գրաւականեալք։ Զայսոսիկ ներհական խորհուրդս յեղյեղելով 'ի միտս իւր, ոչ գտանէր ելս երկուց անհնարին իրաց․ այլ ոչ ներէր ժամանակն՝ վարանել․ պատգամաւորն սաստէրստիպէր, ժամադրութեանն պայման սպառէր․ ճեպէր կէտն բաղդասահման՝ կամաւ թէ ակամայ։ Անդ յայնժամ իբրև 'ի յեղակարծ իմն թմբրութենէ թօթափեալ Լեւոնի, վճռեաց և ինքն ընդդէմ անյեղլի կամաց հզօրին այնորիկ՝ կամս աննկունս, թէպէտ յանդգունս․ ասելով անշուշտ ընդ միտս իւր, Թէ նա Սալահէտտին իցէ՝ և ես Լեւոն եմ․ ինձ թափառական թաքթաքուր շրջել յօտար երկիր՝ չէ հնար․ կամ կորուսից կամ ստացայց զամենայն։ Եւ հայեցեալ յաստուածահաստատ ամուրսն Տաւրոսի, յիշեաց զնախորդն և զգաստիարակ իւր ոստխին հզօրի՝ ոչ ինչ ընդհատ հզօրն Նուրէտտին․ որոյ ստգտեալ երբեմն յիշխանաց իւրոց, եթէ՝ Զի՞ է զի այդքան երեսս առնես Հայերոյդ, և տաս Մլեհի վիճակ յերկրի քում (զԿիւրիս գաւառ), ետ պատասխանի․ Այո՛, քանզի բնութիւն՝ աննուաճելի գործեալ է զերկիր նորա․ երբ և կամիցի մարթ է նմա՝ ոստչել անտուստ, մտանել աւերել զմերս․ վասն այնորիկ ոչ խնայեցի իմիք, զի յիմ կողմն ձգեցից զնա․ և ետու նմա բաժին յիմոց գաւառաց, առ 'ի լինել ինձ նիզակակից ընդդէմ Փռանկաց։ Յիշեաց և զիւր իսկ դեռ նոր ձեռակերտ դղեակն, զանմատոյցն Սիս՝ առ որով զգետնեացն զԹուրքմանն, զապաւաժահալ բերդն Անազարբայ՝ զոր 'ի ժամանակի առմանն Երուսաղեմի հրաշակերտէր, զԿոռիկոս՝ որում զծով և զցամաք պարիսպ կացոյց․ և թթուաբար իմն ակն արկանելով ընդ դեսպանս սուլտանին, ասէր ամենի հոգւով, որպէս արդարև վայրագասուն իշխեցող լերանց, և ոչ որպէս յետոյ արքայ բարեշուք․ Ար դու, երթ և «ասա ցսուլտանն, թէ երկիր ոչ ունիմ տալ քեզ․ բայց »եթէ գայցես յերկրիս իմում, տաց քեզ յերկսայրից ըմ»պելիս, որպէս հաւատակցին քում Ռըստոմի [1] »։ — Անդարձ էր բանն՝ որ ել 'ի բերանոյն․ արկաւ վիճակն յանդգնութեան 'ի նժար բաղդի, որ առ 'ի մարդկանէ՝ գրեաթէ խորասուզել թուէր զԼեւոն և զպետութիւնն Ռուբինեանց, եթէ ոչ էր 'ի վերուստ արկեալ և վիճակ մի կենաց և մահու, եղերելով զսահման Սալահէտտինի։ Աւելի է ասել՝ քանի՛ յանդուգն և յիմարական նրւեցաւ սմա ստունգանութիւն Լեւոնի, և ո՛րքան ծանրացաւ ուրեք եղեալ՝ կամէր առժամայն բնաջինջ առնել զնա՝ տամբ և անուամբ։ — Սկիզբն էր յայնժամ 1193 ամի և եղանակ ձմերայնոյ, որ մեղմ է 'ի գաւառսն յայնոսիկ․ այլ Սալահէտտին՝ որ 'ի Դամասկոս դէմ եդեալ էր երթալ, արդէն զօրհասական հիւանդութեանն կրէր յինքեան ըղձերմն․ բայց և այնպէս, թէ ոչ անձամբ խաղաց՝ ըստ պատմչին մերոյ, որ չէ հաւանական, այլ խաղացոյց գունդս զօրաց ընդդէմ Պարոնին Հայոց՝ մինչև 'ի Սեաւ գետ, որ է ասել 'ի սահմանամէջս իշխանութեան նորին և Անտիոքայն․ այլ անդէն կասեցան զէնքն մահաբերք՝ գուժիւ երագագոյն մահու՝ այնքան մահունց ներգործող աշխարհակալին․ մեռաւ նա 'ի Դամասկոս յառաջին աւուրս ամսեան փեբրուարի․ և իբրև 'ի նոր կենդանութիւն փոխեցաւ Լեւոն, զերծեալ յիւրոց կասկածանաց և 'ի նորայոցն սպառնալեաց։ — Ոչ շնորհեցաւ պատմութեան՝ իրապէս կամ անձամբք յանդիման իրերաց կացուցանել զերկոսին ախոյեանսն՝ 'ի թատր իւր, և տեսարան մի ևս սխրալի ցուցանել ապա եկելոց [2]․ թէպէտ և եղերական ևս լինէին ելքն՝ մերոյս կողման, այլ անշուշտ ոչ վրէպ 'ի մեծութենէ․ սակայն թէ ոչ իսկապէս կամ նիւթապէս, այլ բանաւորապէս կատարեալ է հանդէսն՝ հասեալ ցայսվայր եղելութեան․ անմարթ է իմաստասէր մտաց չկալ չհամեմատել առ վայր մի զԼեւոն և զՍալահ-



208․ Սալահէտտին Սուլտան․

էտտին, յետ համեմատելոյ զսա և զնա՝ ընդ այլոց զուգաժամանակ վեհից, թէ գոյին և այլք հաւասարելիք սոցին։ Ծաղր արդարև լինէաք յաչս զգօնից օտարաց՝ եթէ տարապայման մերասիրութեամբ զփոքրիկ պետ փոքումասին ազգիս՝ 'ի կշիռ զուգէաք այնքանոյ առ հասարակ յամենեցուն յարևելեայց և յարևմտեայց, 'ի բարեկամաց և 'ի թշնամեաց՝ վկայելոյ և գովելոյ, մեծի և հզօրի առն, որպիսի ոք Սալահէտտինն էր․ տոհմիւ արդարև գծուծ և սինլքոր՝ առ ազնուութեամբ մերոյս Լեւոնի, և բարուքն՝ վատթարագոյն ևս յերիտասարդութեանն, յոյլ և շուայլ․ մինչև բռնի և ստէպ մղիլ 'ի Նուրէտտինէ՝ 'ի զինուորութիւն և 'ի վարչութիւն, յոր մերս Լեւոն ին-

[1] Այսպէս աւանդէ զբանս Լեւոնի՝ պատմիչն մեր արքունի։

[2] Ոչ գիտեմ՝ իմաստասիրական խելամտութիւն իցէ՝ եթէ վայրապար խելասանձութիւն, վարանել խոճոճել, եթէ յարշաւել մտել Սալահէտտինի վրէժխնդրութեամբ 'ի Սիսուան, կամ թէ սակաւ ինչ կանխեալ էր ժամանակաւ՝ և մտեալ Թաթարաց անդիմակաց գումարտակօքն յարևմտեան Ասիա, որպիսի՛ ոք հանդիպեանսր Լեւոն․ լինէ՞ր արդեօք որպիսի եղեն, ինքնագլուխ թագաւոր Հայոց։ Հաւատամ, զի այնմ՝ զոր Աստուած կամիցի մեծ առնել 'ի վերայ երկրի, հարթէ և զճանապարհ մեծութեանն, և որպէս առ օծեալն իւր Կիւրոս՝ ասէ ծածուկ տեսչութեամբն, «Ես երթայց առաջի քո․ զլեռինս հարթեցից, զդրունս պղնձիս խորտակեցից, և զնիգս երկաթիս փշրեցից․ և տաց քեզ զգանձս խաւարինս»․ և այլն․ (ԵՍԱՅԻ, ԽԵ)։

քնակամ և իբր ընդարոյս ախորժանօք ձկտէր. այլ յետ միանգամ զմարտից և զաւագութեան համ առնլոյ՝ դիւցազնանայր Քուրդն Դունացի[1] կամ Տիգրիտցի, և արութեամբ և հնարագիտութեամբ, խոհականութեամբ և մեծոգութեամբ, իշխեցից ասել թէ և առաքինութեամբք՝ ըստ տուչութեան բնական շնորհաց, գերազանցէր զամենեքումբք որ առ իւրեւն, և քան զյոլովս որ յառաջ և յետոյ յարևելս, գլելով յայսմ մասին զքրիստոնեայ իշխանօք՝ ընդ որս եղև նմա ունել գործ. որպէս զի երկոցուն կրօնից ևս պատմիչք՝ միաբանք գտանին 'ի մեծարել զնա։ Սակայն ածեալ զմտաւ և զայն՝ զի Սալահէտտին օգնականութեամբ Նուրէտտինի և մատնութեամբ պաշտօնէից սուլտանին Եգիպտոսի՝ ամբարձաւ յիշխանութիւն, և օժանդակս ունէր զբազմաբոյլ տոհմս հաւատակցաց իւրոց, զԱրաբացիս, զԵգիպտացիս, զԹուրքս և զԹուրքմանս և զՔուրդս, որք միամտութեամբ յարեալ ստուարացուցանէին զբանակս նորա. իսկ զի Լեւոն՝ սակաւաձեռն գնդաւ յաղթողանայր բազմաւորացն, և այն 'ի միջի այլալեզու և այլածէս ժողովրդոց Կիլիկիոյ, առաւելուն յոյժ արդիւնք սորա. և զարմանալի ևս հանդիսանայ մեծագործութիւնն, որով ոչ պատկառիմ գերազանցեալ քան զընդդիմակացն՝ ասել զնա։ Չի եթէ Սալահէտտին բազում ինչ մեծամեծս գործեաց, այլ ոչ գործ մի մեծ. ոչ 'ի չգոյէ յարոյց պետութիւն նոր, ոչ օրէնսդիր կամ կրօնսուսոյց նոր երևեցաւ, ոչ գերահռչակ յիշատակարան մի կանգնեաց և եթող յետ իւր. և եթէ բազում յաղթութիւնս կատարեաց 'ի վերայ քրիստոնէից, և կալաւ գրեաթէ զամենայն վիճակս և զամուրս նոցին, և զգլխաւորն բնաւից զԵրուսաղէմ. սակայն զինչ կէտ էր նպատակի նորա, եթէ ոչ կամ վրէժխնդրութիւն 'ի քրիստոնէից, կամ յաղթասիրութիւն. թող զի և յետ ամենայն ճգանցն և յաղթանակաց՝ զիջաւ խոնարհեցաւ թողուլ զմեծ մասն երկրին՝ յորոց կորզեացն, և որք ընդ հուպ առաւել քան զառաջինն բարգաւաճեցին յերկրի անդ Ասորւոց դար մի ևս, (քաւ 'ի նուաճելոյ զԵրուսաղէմ). մինչ միահեծան տէրութիւն սուլտանին բաժանեցաւ 'ի բազումս և տկարացաւ։ Իսկ Լեւոն՝ թէ և ոչ ինչ պակաս իշխանասէր, այլ վեհագոյն նպատակաւ, ոչ անպատճառ զայլս կողոպտեաց, կամ թէ այնքան՝ որքան շատ համարէր 'ի միահամել զազգ իւր՝ գրեաթէ ոչնչացեալ կամ յերերի կացեալ ըստ հաճոյս բաղդի, և յանձն իւր կանգնել զնա։ Նա և բաղձալն և նկրտել արքունական չքոյ, ոչ այնքան մեծ փառասիրութիւն էր նմա՝ որքան մեծագոյն բարերարութիւն առ ազգ իւր. զի այնու, (եթէ ներեսցի այսպէս նմանեցուցանել), 'ի պսակ թագի իւրոյ՝ որպէս ակամբս պատուականս՝ բոլորեաց զվաթսուն կամ զեօթանասուն պարոնայս բերդատեարս. որք՝ առանց այնր անուան և չքոյ՝ անջատք և անմիաբանք, և յաճախ հակառակք իրերաց կալոց էին, մանաւանդ թէ ոչ ևս կալոց՝ այլ քակտելոց, թէպէտ իւրեանց ձեռօք՝ թէպէտ օտարաց։ Արդարև ուրեմն գործեաց Լեւոն գործ մի, և գործ մեծ, որպէս և 'ի սկզբան պատմութեան վարուց նորին առաջի արարաւ, և որպէս ցուցցի և յառաջիկայդ. մանաւանդ 'ի նկատել և 'ի համեմատել մեր զնա, որպէս արդ ընդ Սալահէտտինի, յետոյ ընդ այլոց ևս հոյակապ արանց իւրոյ ժամանակին, զորս հարկ և կարգ պատմութեանս մի ըստ միոջէ յառաջ մատուցէ 'ի հանդէս և 'ի գործակցութիւն ընդ նմին։

1 Պատմիչք մեր զազգատոհմն Սալահէտտինի համարին Քուրդ ազգաւ, և 'ի սահմանաց քաղաքին Դունայ։



209. Յատակագիծ Սեհուն բերդի. (Տես յէջ 444)։

# ԴՐՈՒԱԳ Գ.

Ա. Դաւաճանութիւն Բրնձին Անտիոքայ. — Բ. Բարեկամութիւն Լեւոնի ընդ իշխանս արեւմտեայս որ յայսկոյս ծովու եւ ընդ Ասպետս, եւ որ յայնկոյս. — Գ. Քաղաքավարութիւն նորա ընդ ազգայինսն եւ ընդ ուխտի եկեղեցւոյն. — Դ. Ներսէս Լամբրոնեցի եւ Լեւոն։

Ա. Մահ Սաղահէտտինի ոչ այնքան առիթ ապահովութեան ընծայեաց Լեւոնի, որքան խէթ կասկածանաց Բրնձին Անտիոքայ, որ յուսայրն անուամբ եւ զինուք մեծի սուլտանին՝ թափել 'ի Լեւոնէ զգրաւեալ սահմանս երկրին, եւ զնա ինքն՝ որպէս զնախորդն՝ ունել իւր հլու արգադիր։ Եւ զի ոչ յայսմ նուագի եւեթ՝ այլ եւ յետոյ մանաւանդ բազում եւ մեծամեծ վէճք եւ գործք եղեն երկոցուն դրակից պետութեանցն, Հայոց եւ Անտիոքեայց,



210. Հին պարիսպք Անտիոք քաղաքի.

արժան է գիտել եւ զհանգամանս օտարին այն մերձաւորի, որ եւ գլխաւոր էր ամենայն իշխանութեանց արեւմտեայցն յարեւելս, յետ թագաւորութեան Երուսաղեմի, մանաւանդ մինչ չեւ էր կանգնեալ թագաւորութեան Կիպրոսի։ Վայելուչ էր նախապատուութիւն քաղաքին Անտիոքայ՝ յաւուրց յաջորդացն Աղեքսանդրի՝ առաջին ամենայն քաղաքաց Ասիոյ համարելոյ, աթոռ գոլով հզօր թագաւորութեանն Սելեւկեանց. եւ 'ի նոյն բարձրու-

թիւն առաւել ևս հաստատեալ 'ի Հռովմայեցւոց՝ համարեցաւ երկրորդ քաղաքս 'ի մեծի ինքնակալութեան իւրեանց, նոյնպէս ապա և 'ի Բիւզանդացւոց, մինչև կորզեցին 'ի սոցանէ Արաբացիք. յորոց՝ կրկին թափեալ առ Բևեղեան կայսերաց՝ 'ի կէս Ժ դարու, առաքէին անդր կուսակալ մեծ՝ Դքսութեան պատուոյ կոչմամբ. յայն պատիւ հասին և ոմանք 'ի մերոց համազգեաց, որպէս Խաչատուր՝ առ դժբաղդն Դիոգին-Ռոմանոս կայսերբ, (1068-71), և յետ սակաւուց ժպիրհն Փիլարտոս, որ իբր 'ի վրէժ մերժման Ռոմանոսի 'ի գահէն՝ յափշտակեաց զիշխանութիւնն Անտիոքայ, և առ 'ի կալ հաստատուն՝ յարեցաւ յայլազգեանս. ընդ որ խոժոռեալ որդւոյ իւրոյ՝ մատնեաց զքաղաքն 'ի ձեռս Սուլէյմանի՝ սուլտանին Իկոնիոյ. և 'ի սմանէ կորզեաց բռնազօյնն՝ Դուղուշ, կարգեալ անդ վերակացու ընդ ձեռամբ։ Ախուսիան անուն ոմն էր կողմնակալ Անտիոքայ՝ 'ի գալստեան և յանցս Ա Խաչակրաց՝ ընդ երկիր լեռնական պարոնայց մերոց, և 'ի դիմելն յայս կոյս, և պաշարել զքաղաքն զամիսս տասն, և առնուլ յ'3 յունիսի 1098 ամին, առ պայազատութեամբ Կոստանդնի որդւոյ Ա Ռուբինի. և զի բազում արութիւն քաջութեան եցոյց 'ի մարտս՝ 'ի ժամանակի պաշարման քաղաքին՝ Պեմունդ [1] զօրավար, որդի Ռոպերդի Կիսգարտայ իշխանին Բուլիոյ, նմա ետուն զիշխանութիւն Անտիոքայ. որ և հանդերձ ամենայն յաջորդօքն՝ զնոյն պատուոյ անուն պահեաց, Prince ըստ Փռանկաց, զոր մերքս փոխեցին 'ի Բրինճ, և սեփականեցին նորանց այսմ իշխանութեան. վասն որոյ և մեք նոյնպէս կոչեմք 'ի պատմութեանս։ Առ ժառանգաւ սորին և որդւով (Պեմունդ Բ) մինչ տղայն էր, իբրև տեղապահք յանձանձէին զպետութիւնն՝ սպրապաշն Տանգրի և այլք. և զի ոչ եթող նա զաւակ արու, Ռեմունդ՝ 'ի տոհմէ իշխանաց Բուաթիէի փեսայացեալ 'ի դուստր նորա Կոստանդիա՝ եղև Բրինձ, և 'ի զարմ իւր փոխեցաւ իշխանութիւնն մինչև 'ի վախճան։ Եւ քանզի Տանգրի և ընկերք իւր՝ մինչ չև էր իջեալ Ռուբինեանց 'ի Տաւրոսական լերանց անտի 'ի Դաշտայինն Կիլիկիա, գրաւեալ էին զքաղաքս սորին, և յետ թափելոյ Յովհ. Կոմնենի զնոսին և տիրաբար մտանելոյ յԱնտիոք, որպէս յետոյ և Մանուէլի, Բրինձն՝ լիճ կայսերաց համարեցաւ առ վայր մի. և 'ի մեկնելն Յունաց և 'ի նուաճել մերոցս Պարոնայց զքաղաքանիսն՝ ոչ ազատ տեարք համարէին այնոցիկ, այլ իբրև ըստ ձեռանէ Բրնձացն, և թէ ոչ լինէք՝ այլ մեծարողք և արգաղիրք նոցա [2]։ Այսու իրաւամբք կամ պահանջմամբ՝ Պեմունդ Գ որդի և յաջորդ Ռեմունդի և Կոստանդիայ, թէպէտ և իւրովք կամօք զՏարսոն վաճառեալ էր Ռուբինի՝ այլ տակաւին համարէր զնա իւր պարտական, և խարդախութեամբ կալեալ և արձակեալ, ոչ միայն եհատ 'ի նմանէ բերդս և վիճակս, այլ և 'ի նոյն մեծարանս հարկեցոյց։ Ցայսմ հարկի կայր և Լևոն 'ի յաջորդելն զՌուբէն. և թէպէտ ինքնիշխանաբար և տիրաբար գործէր և ընդարձակէր զսահմանս տէրութեանն, մինչև միջամուխ լինել 'ի կալուածս իսկ վեհագունին իւրոյ Բրնձին, սակայն ըստ քաղաքական օրինաց և յաչս այլոց քրիստոնեայ տերանց երկրին Ասորւոց՝ տակաւին Բրինձն Անտիոքայ համարիւր վեհագոյն Պարոնին Հայոց. որում և ինքն իսկ Լևոն երևի հաստուցեալ զպարտս մեծարանաց՝ 'ի սկզբան պայազատութեանն, մինչ չև էր ձգեալ ըղբաղուկն 'ի վերայ մարզից մարզից, և մինչ չև էր Սալահէտտինի մխեալ 'ի սահմանս նորին Անտիոքացւոց և տկարացուցեալ զնա. և առ ակնածութեան իսկ, ասեն, 'ի նմանէ, և 'ի շահել զնա, էառ 'ի կնութիւն զազգականն և զհամանուն կնոջ նորա Սիպիլայ։

Արժան է գիտել 'ի պէտս ապա պատմելեացս, զի այս Սիպիլ (երրորդ կամ չորրորդ կին Պեմունդի), անտիոքացի էր ազգաւ, թերևս և յազնուաց, այլ անծանօթ միայ տունն, որով և աներ մերոյ Պարոնիս. բայց ինքն համբաւեալ էր իբրև վհուկ մի ջատուկ. և նա ինքն ընծայեցոյց Լևոնի զկինն՝ զոր էառ սա, որպէս ասացաք, առ քաղաքական տեսութեան և ոչ ըստ հաճութեան կամաց և ըղձից, թերևս ոչ քննելով քաջ զբարսն, որ յետոյ բազբեկք ցուցան։ Այս Պեմունդ Գ էր մականուանեալն Կակազ (Bègue կամ Bambe), զոր տեսաք սակաւուք յա-



211. Դրամ Պեմունդի Գ, Բրնձի Անտիոքայ.

ռաջ քան զմահ Սալահէտտինի՝ երթեալ առ նա վասն հաստատելոյ զսահմանս երկրին, և շնորհս գտեալ 'ի նմանէ. և մեծի հաւանութեան է՝ եթէ և գրգռեալ զնա ընդդէմ Լևոնի, որպէս երբեմն նորին թեւարկութեամբ կամ թելադրութեամբ՝ դաւաճանեալ էր զեղբայր նորա Ռուբէն [3]։ Այլ իբրև ետես՝ եթէ վրիպեցաւ 'ի յուսոյն՝ մահուամբ սուլտանին, մտաբերեաց 'ի հին խորամանկութիւնն՝ դաւել և զԼևոն, որպէս երբեմն զեղբայր նորա Ռուբէն։ Հրաւիրակս առաքեաց առ նա՝ գալ առ ինքն, կամ 'ի մէջ սահմանաց իւրեանց, և ճշգրտել զնոսին, զի բարձցի այնուհետև 'ի միջոյ ամենայն վէճ և խէթ. և խոկայր հնարէր թէ որպէս և ուր ըմբռնեսցէ զնա։ Եթէ շութափելով իսկ կոչելն զնա չէր բաւական կասկածելի առնել զդաւադրութիւնն, ամենևին աներկբայ նշաւակեաց զայն՝ նոյն ինքն Բրնձէսն կախարդասար. իբրև ոչ կարաց յետս կասեցուցանել զայր իւր 'ի խորհրդոյ նենգութեանն, գաղտ պատգամաւորութեամբ ծանոյց Լևոնի, մատն լինելով առն իւրում. որ՝ թէ չէր քաջ ողջամիտ ոք՝ և ոչ սա ողջախոհ, մինչև սիրարկու իսկ Լևոնի կարծել ոմանց օտար պատմչաց ժամանակին [4]։

1 Յատուկ անուն նորա յաւազանէն՝ էր Մարկոս, իսկ Պեմունդ կամ ըստ Փռանկաց Բոհէմոնդ, Bohémond, կոչեաց զնա հայր իւր՝ վասն անհեդեդ հարստութեան հասակին, զի յայն անուն հռչակէր 'ի վէպս նոցա հսկայ ոմն. անուն՝ ոչ հնաւ յերբայականն Բեհեմովթէ։

2 Այս ինքն է ըստ աւատական օրինաց faire hommage։

3 Հաւաստէ զայս Միխայէլ Ասորի բանիւքս. «'ի այն ժամանակս » Բրինձն Անտիոքայ՝ արար գործ սիրոյ ընդ Սալահադինն, և որսա- » ցաւ զՌուբէն զՏէրն Կիլիկիոյ »։

4 Շարայարող Պատմ. Գուլ. Տիւր. (ԻԶ. Ժ.) ասէ, 'ի մեկնել Պեմունդի զնալ 'ի Կիպրոս՝ 'ի տես Հռիկկարդէ՝ թագաւորի Անգղիոյ,

Ցայտ է զի չէր ժամանակն այն համբաւեալ զգաստութեամբ, և զեղծումն բարուց արևմտեայցն զգուեցոյց նախ՝ և ապա ղեղծոյց զարևելեայս. իսկ նենգութիւն և խարդախութիւն իշխանաց և իշխանաւորաց՝ համարէր հնարագիտութիւն՝ ոչ անման 'ի գովութենէ, և երբեմն կարևոր իսկ։ Ոչ ինչ խղճեաց և Լևոն նենգաւ զնենգն լուծանել, և յորոգայթն պատրաստեալ՝ զնոյն ինքն զորոգայթադիրն խարդաւանել։ Ոչ հրաժարեաց 'ի կոչոյ Բրնձին, այլ և առաւել իմն մեծարանս նմա առնել կարծեցուցանելով, զնա ինքն հրաւիրէր գալ նախ՝ բամբշաւն հանդերձ 'ի կողմանս Պաղրասայ կամ յաղբիւրն Կաստիմոյ, ուր խնջոյս մեծ առնելոց էր նմա, և ապա 'ի միասին երթալ յԱնտիոք. 'ի նոյն յորդորեաց և Սիպիլ զայր իւր. և սա գնաց անկասկած տիկնաւն և մեծամեծ պաշտօնէիւք, այսինքն են գունդստաբլն Թաուզ-տէ Մոնս, մարաջախտն Բարդուղիմէ, քարտուղարն Օլիվիէ, և այլք բազումք. միայն զանդրանիկ իւր Ռեմոնդ և ըզպատրիարքն եթող 'ի քաղաքին։ Ընդ առաջ ել նմա Լևոն սակաւ արամբք, հեռագոյն 'ի դարանի եղեալ հեծեալս երկիրիւր. և իբրև ետես զայնքան բազմութիւն օրերոյ ընդ Բրնձին՝ ոչ համարձակեցաւ անդէն ձեռն արկանել 'ի նա. այլ անպատշաճ առելով զտեղին՝ հրաւիրեաց երթալ մտանել 'ի բերդն (Կաստիմ), և անդ խրախանալ. և իբրև կերան և ընդ գինիս մտին, հրամայեաց Բրինձն հանդերձել զերիվարսն՝ զի երթիցեն 'ի քաղաքն. դարձան սպասաւորքն խուճապեալք և ծանուցին զի անդրուվարք և վարիչք՝ կալանաւորեալք էին 'ի մանկանց Պարոնին Հայոց, որոյ 'ի նմին պահու մուծեալ էր զդաբանակալսն 'ի բերդն. առ որ՝ ապշեալ Բրինձն ասէ. Զինչ է այդ, Լևոն. միթէ և զիս ըմբռնել կամիցիս։ — Ըմբռնեալ իսկ ես, ասէ Լևոն։ — Եւ առ իմէ՞։ — Վասն կալանաց եղբօր իմոյ Ռուբինի, զի նենգաւ կոչեցեալ զնա յԱնտիոք, կալար և արկեր 'ի դիպահօլ, և ոչ արձակեցեր՝ մինչև ոչ բռնադատեցեր թողուլ 'ի քեզ զմեծ մասն մի երկրին, 'ի Ջահան գետոյ մինչև 'ի բերդս Կաստոն. և 'ի վերայ այնր՝ պահանջեցեր ևս ծանր փրկանս։ Արդ և ես ոչ արձակեցից զքեզ, մինչև ոչ դարձուսցես յետս զարծաթն և զերկիր զոր առեր, այլ և զքաղաքն Անտիոք, որպէս խոստացեալ էր քո նորին թողուլ 'ի մեզ[1]։ Իբրև գիտաց Բրինձն՝ թէ չիք հնար ճողոպրելոյ 'ի նմանէ, խոստացաւ տալ զքաղաքն, բայց խնդրէր թողուլ զինքն՝ զի անձամբ երթեալ հաւանեցուսցէ զքաղաքացիսն։ — Այդմ անհնար է լինել, ասէ Լևոն. այլ առաքեսցես դու յաւրանցդ որ այսր կան, և ես յիմոցս, և յանձնեսցի քաղաքն. ապա ելեալ գնասցես դու յով և կամիս։ Ցայնժամ պատուէր ետ Պեմունդ մարաջախտի իւրում և այլոց ոմանց յաւագացն՝ երթալ խօսել ընդ քաղաքացիս՝ ըստ այսմ բանի. առաքեաց և Լևոն յիւրայոցն՝ զփեսայն իւր Հեթում Սասնեցի[2], հանդերձ այլովք։ Իբրև մերձ եղեն 'ի քաղաքն՝ պատուիրեաց սա պատգամաւորաց Բրնձին՝ երթալ յառաջագոյն հաւանեցուցանել զքաղաքացիսն, զի բերցեն առ ինքն զբանալիս քաղաքին և զբերդին և զայլոց մերձակայ ամրոցաց, և ապա թէ ինքն մտցէ 'ի ներքս. և նկայ մնաց յանուանեալ տեղւոջն Ս. Յուլիանէ. բայց զմի 'ի զինակրացն առաքեաց երթալ գիտել զինչ լինիցի, և եթէ տայցեն ինչ նմա՝ բերել։ Երթեալ սորա մերձ 'ի դուռն քաղաքին՝ ետես մատուռն մի զոր էր շինեալ հօր Բրնձին՝ 'ի պատիւ Ս. Իլարիոսի պաշտպանի հայրենեաց իւրոց Բուաղիէի. եհարց, թէ զինչ և ո՞ր իցէ այդ. և յասել ոմանց զինչ էրն, նա զաւեհկարար, թերևս և լուտանօք, Զգիտեմ, ասէ, ո իցէ Իլարիոս, այլ մեք կնքեսցուք զդա յանուն Սրբոյն Սարգսի։ Զկծեցան որք լուանն՝ յորհամարհանացն, մանաւանդ զի լուեալ ևս էր զկալանաւորել իշխանին իւրեանց, և մորմոքէին յոգիս իւրեանց. անդ զրաստապան ոմն մրմռեալ մեծաւ սրտմտութեամբ՝ սկսաւ կշտամբել զորս անդն կային, զի հանդուրժէին լսել բանս այդպիսիս, և վատութեամբ լքեալ զտէրն իւրեանց՝ մատնէին զքաղաքն 'ի ձեռս աւրանց վատաց. և առեալ վէմ մի եհար զզինակիրն և տապալեաց յերկիր։ Զայն տեսեալ ընկերաց նորա Հայոց՝ որք առ դրան կամրջի քաղաքին կային՝ ամփեալ զաղաղակ բարձին. ընթացան անդր պահապանք դրանն և այլք բազումք 'ի ներքուստ անտի, և կալան զՀայ որեարն. ձայն ետուն 'ի քաղաքն համօրէն, խմբեցան 'ի մեծ եկեղեցին Ս. Պետրոսի, հանդերձ պատրիարքաւն. և խորհուրդ արարեալ հաստատեցին կարգել զՌեմոնդ՝ զանդրանիկ Բրնձին իւրեանց՝ իշխան, մինչև արձակեսցի հայր նորա։ Զգացեալ Հեթմոյ զչուելն և զհակառակութիւն Անտիոքեցեաց, և երկուցեալ թէ գուցէ հորդան տուեալ և զինքն ձերբակալ արասցեն, փութացաւ որովք ընդ իւրն էին՝ դառնալ գալ արկանել Լևոնի 'ի Կաստոն բերդ։ Տեսեալ և սորա զի վրիպեցաւ պատեհ տիրանալոյ քաղաքին, զտէր նորին զոր 'ի բռին ունէր՝ և զորս ընդ նմա, առեալ զգուշութեամբ եբեր յերկիր իւր և արկ 'ի դիպահօլ 'ի կլայն Սոյ, և պահէր պատուով տարևոր ժամանակաւ. ակն ունելով կամ խոնարհեցուցանել զԱնտիոքացիս, կամ զերագոյն ինչ փրկանս ընդունել։ Իսկ նոցա բազում ինչ բազում անգամ խորհեցեալ և ոչ գտեալ ելս աղագս, հաստատեցին պատրիարքաւն և իշխանօրդւոյն՝ աղերսել թախանձել զընծայեալն 'ի թագաւորութիւն Երուսաղեմի, որպէս կոչէ Լամբրոնեցին[3], կամ զԹագապահն՝ Էնրիկ կամ Հենրի կոմս Շամբանեայ,

վտարէր տիկնոջն Սիպիլէ յանկուցեալ յինքն զԼևոն, և թելադրեալ ըմբռնել զայրն, զի նեղէր զինքն, և զի էր նորա յառաջագոյն առեալ այլ կին. և Լևոնի խոստանալ առնուլ զնա 'ի կնութիւն, և կալեալ զՊեմունդ և 'ի բանտ արկեալ նեղել, մինչև հաւանեսցի զրկել զորդիս իւր ժառանգս՝ յառաջին կնոջէն, և տալ զԱնտիոք 'ի Գուլիելմ՝ 'ի ծնեալն 'ի Սիպիլայ։ Այլ այսոքիկ վիպասանական ստեղծաբանութիւնք թուին. մանաւանդ զի վկայեալ է 'ի ստոյգ պատմագրաց՝ գտանիլ Լևոնի 'ի Կիպրոս, մինչ անդ էր և Բրինձն և Թագաւորն Երուսաղեմի։

1 Ցետրեա այս՝ խոստումն Պեմունդի՝ տալ զԱնտիոք 'ի Լևոն, անհաւան թուի, բայց եթէ զուցէ ինչ պատճառք անծանօթ 'ի մէնջ. այլ թէ բաղձայր Լևոն ժառանգել և զայն, ընդ երկրայութեամբ է։

2 Ցայտ ուրեմն է աստի զի դէպքս այս եղեն 'ի գարնայնի 1195 ամին, և ոչ յամի 1194, որպէս շատք 'ի նոր պատմչաց ասեն. քանզի ստուգիւ գիտեմք յայսմ 1195 ամի վախճանեալ զԳր. կաթողիկոս Տղայ, 'ի կէս կամ 'ի յետին կէս մայիս ամսոյ, և մինչ չև անցեալ ամսոյ միոյ՝ մեռան և Հեթում և եղբայր իւր։

3 Ի չափագովական թղթին զոր գրեաց առ Լևոն. «Գունդ »Հեռի՝ որ Պաղեստինացւոցն է ընծայեալ արքայութեանն, զոր »յայս ամ բերեալ ձեր 'ի Տարսոն, սկիզբն զայս արար առ մեզ խօ»սելոյ, թէ ոչ զոք գտայ այսօր բարի անուամբ հռչակեալ առ բա»զումս, որպէս զքո երկնղածութիւնդ»։

զի եկեսցէ լինել միջնորդ և զերծուցանել զԲրինձն. յանձն էառ նա, զի երկոցունց ևս կողմանց էր բարեկամ և սիրելի. եւ 'ի Պտղոմայիդայ, և եկն նախ 'ի Տրիպոլիս, և առեալ ընդ իւր զկոմսն Պեմունդ (Դ) զկրսեր որդի Բրնձին, եկն յԱնտիոք. և անդ քննեալ և տեսեալ զի ոչ է մարթ բռնութեամբ ինչ վճարել, առաքեաց հրեշտակ հաշտութեան առ Լեւոն, և ընկալեալ ողոք պատասխանի[1],




212. Դրամ Ենրիկ կոմսի Շամպանեայ՝ թագաւորին Երուսաղեմի.

էառ ընդ իւր զօրս պատշաճ վարկաւ, և եկն 'ի Սիսուան, (1194)։ Եւ ընդ առաջ նորա Լեւոն, և եմուտ մեծաւ շքով յիշխանանիստն. լուաւ խնդրուածոցն. կոչեցաւ և Անտիոքացին, և միաբան հաստատեցան այս բանք դաշանց. զի, Ա. Արձակեսցի Բրինձն (որպէս թուի՝ անփրկանակ), այլ մի ևս համարիցի ունել իրաւունս պահանջելոյ 'ի Լեւոնէ մեծարանս. նա մանաւանդ, Բ. ինքն Բրինձն Անտիոքայ յայնմհետէ արգաղիր մեծարող լիցի Լեւոնի, իբրև վեհագունի. Գ. յետս դարձուսցէ Պեմունդ զամենայն երկիրն զոր հատեալ էր 'ի Ռուբինէ, մինչև 'ի պահակ Դրանն (Portella)[2]. և Դ. քանզի յայնմ ժամանակի արգելանաց Պեմունդի՝ մեռեալ էր Հեթումն Սասնեցի, այրիացեալն Ալիծ՝ դուստր Ռուբինի եղբօր Լեւոնի՝ տացի 'ի կնութիւն Ռեմունդի անդրանկան Բրնձին, յանէրկեան հաստատութիւն հաշտութեան, և որդիք նորա ժառանգեսցեն զտէրութիւն Անտիոքայ։ Կնքեցան դաշինքն երդմամբ և գրով, և արձակեցան իշխանն և իշխանուհին և ամենայն




213. Դրամ Ռեմունդի կոմսի Տրիպոլեայ, փեսայի Լեւոնի.

ազատք և ծառայք նոցին։ Յետ կատարման սգոյ Ալիծայ՝ որ դեռ ևս իբր չորեքտասանամեայ էր, հրաւիրեցաւ Ռեմունդ[3] 'ի փեսայութիւն, մեծահանդէս հարսանեօք (թուի 'ի նմին ամի 1194), և կայր առ Լեւոնի, իբրև 'ի պատանդի. այլ ըստ պատմչին մերոյ՝ համարձակ «մտանէր և ելանէր ընդ նմա». բայց ըմբռնեալ յախտէ սաստիկ հիւանդութեան՝ մեռաւ կարճօրեայ (յամի 1196 կամ 97), յղի թողեալ զկինն. յորմէ «ծնաւ որդի արու, վայելուչ և գեղեցիկ տեսլեամբ», ըստ պատմչին. և յորժամ յետ ամի միոյ կամ երկուց մկրտեցաւ, 'ի մեծէ արքեպիսկոպոսէն Լատինաց՝ որ զթագն եբեր և պսակեաց զԼեւոն, կոչեցաւ տղայն միանգամայն յանուն հօր իւրոյ և մայրենի հաւուն՝ Ռուբէն-Ռեմունդ. և զի ոչ գոյր Լեւոնի զաւակ արու՝ խորհէր 'ի մտի իւրում զնա կարգել իւր ժառանգ, և այնու ձուլել զերկոսին՝ 'ի մի պետութիւն մեծ և հզօր, զՀայոցն և զԱնտիոքեայց. և մեծաւ զգուշութեամբ սնուցանէր զթոռնագիրն՝ առ բազումս։ Այլ որ յայսմ ժամու հաշտութեան և միաբանութեան առիթ լինէր երկոցուն պետութեանցն՝ տղայն, ընդ հուպ մեծագունի ևս և յերկարագոյն գժտութեան և հակառակութեան լինելոց էր խայծ, և բազում վարանաց և հոգոց Լեւոնի, թէ կամաւ թէ ակամայ։

Քանզի անդէն իսկ 'ի տարաժամ մահուան Ռեմունդի՝ եղբայր նորա կրսեր՝ Պեմունդ (Դ) անուանեալն Միականի (Le Borgne), որ աղիկամի կարգեալ ունէր զկոմսութիւն Տրիպոլեայ, չարարեալ բնաւ երեսս՝ ոչ դաշանցն և երդմանց կռելոց վասն պայազատութեան զաւակաց եղբօր իւրոյ անդրանկան, և ոչ ալեաց հօր իւրոյ՝ որ տակաւին կենդանի էր, ձեռներէց եղև յափշտակել յերկոցուն ևս զգահն, յոր մին նստէր և միւսն նստելոց էր. մինչև կարօտել ծերունւոյ հօրն խնդրել օգնութիւն 'ի Լեւոնէ՝ երբեմն ոսոխէ իւրոյ. իսկ սա՝ զի քան զնորայն՝ զիւրն և զեղբօր թոռինն առաւել դիտէր զշահ օգտի, փութացաւ ձեռն ետ, հալածեաց զապառումծնունդն, հաստատեաց անդրէն զծնողն յաթոռ իւր, յորում և մեռաւ սա յետ սակաւ ամաց (1201). և անդէն բացաւ դուռն անվերջ հակառակութեանց ընդ Լեւոն և ընդ Պեմունդ Դ, որպէս ցուցցէ յետագայդ կարգ պատմութեան։ Իսկ այժմիկ կայ մեզ տեսանել զառտնին գործս Լեւոնի, և զ'ի վաղուց երկնեալ խորհուրդ թագաւորելոյն 'ի գլուխ հանել փառօք և ճարտարութեամբ։

Բ. Մի 'ի խորագէտ հնարից բարգաւաճանաց Լեւոնի՝ էր յանկուցանել յինքն զամենայն աւագ և զօրաւոր այր յարևմտեայց, զմերձաւորս և զորս ըստ պատեհի անցանէին ընդ Ասորիս. կամ ինքնին երթալով առ նոսա, կամ զնոսա հրաւիրելով յերկիր իւր, իսկ առ հեռաւորսն՝ թղթովք և դեսպանօք բանագնաց լինելով։ Տեսաք յառաջագոյն զպատրաստութիւն նորա յընդունել զմեծ կայսրն Փրետրիկ, և ապա զորդի նորա. յետոյ զերթալն յողջոյն Հռիկկարդի թագաւորի Անգղիոյ 'ի Կիպրոս, հաւանօրէն և Փիլիպպոսի թագաւորի Փռանկաց, կամ 'ի Պտղոմայիս, կամ յիւր իսկ սահմանս երկրին՝ յԱտալիա, ուր նաւեալ ելեալ էր թագաւորն այն. և յետոյ զընդունելութիւն Հենրեայ դքսին Շամբանեայ՝ անուանեալ թագաւորին Երուսաղեմի։ Ոչ յառաջ քան զբազում ինչ ժամանակս՝ թուի հրաւիրեալ և ասպնջականեալ նորա և «զընծայեալն թագաւորութեանն Կիպրոսի՝ զԳունդստապլն» Երուսաղեմի՝ զԱմաւրի, որ և 'ի նմին ամի յաջորդեաց զեղբայր իւր Կի Լուզինեան († 13 ապրիլ. 1194) 'ի տէրութեան Կիպրոսի, և յետոյ

1 Quant il furent venus la, et virent que il n'avoient poeir de rien faire par force: si envoia li Cuens Henris messages au roi Livon, etc. — Eracles, XXVI, 26.

2 Eracles.

3 Ի պարգևագրի միում որդւոյ իւրոյ Ռուբինի (1216, տես. 1) մականուանի Ռեմունդս այս Rat, ոչ գիտեմ վասն էր։

(1198) 'ի Թագաւորութիւն Երուսաղեմի, առեալ 'ի կնութիւն զնախայիշեալն Իզապել՝ ժառանգ այնր Թագաւորութեան։ Պատճառ գալստեան սորա առ Լեւոն՝ ոչ է յայտ, զի ոչ յիշի 'ի պատմչաց Խաչակրաց, այլ միայն մերս Ն․ Լամբրոնեցի՝ համառօտիւ 'ի Թղթին առ Լեւոն, յօժանդակութիւն նորին եկեալ ծանուցանէ, ասելով․ «Ի գալն 'ի կարիս ձեր օգնականութեանն՝ առ մեզ, հա» ճութեամբ և գովութեամբ ընկալաւ զմեր բարեկարգու» թիւն»։ Զի՞նչ այն կարիք էին օգնականութեան՝ Լեւոնի, խորհրդեա՞ն թէ պատերազմի, և ընդ ո՞ւմ, Անտիոքացւո՞ց, Տաճարականա՞ց, թէ այլազգեաց և այլադենից․ — փափագելի մնայ 'ի յայտնութիւն։ Այլ որ զինչ և էին պէտք Լեւոնի և օժանդակութիւն Ամաւրեայ, կարծեմ թէ սրտագին ևս եղեն սորա կարիք և մեծագոյն ևս փոխարէն օգնականութեանն՝ զոր մատոյց նմա Լեւոն՝ յետ երից ամաց (1197)․ յորժամ հեղլէն յեղուզակն Գանաքէ՝ յափշտակեաց զդչխոյն Եշիվա (առաջին կին Ամաւրեայ՝) 'ի Պարատիզի գեղջ, 'ի ծովեզերս Կիպրոսի, հանդերձ մանկամբքն և կարասեաւ, և տարաւ յԱնտիոքեակ Կրագեան, առ Կիռ Սահակ տէր քաղաքին․ յորմէ ուժգին սպառնալեօք պահանջեալ թափեաց Լեւոն, և եբեր զդշխոյն 'ի Կոռիկոս, հրաւիրեալ անդր միւսանգամ զԱմաւրի, և տուեալ նմա զգերեալ ընտանիսն, հանդերձ ընծայիւք․ որպէս մանրագոյն ևս նշանակեալ եմք 'ի տեղագրին Անտիոքեակ քաղաքի։ — Աւելորդ է ասել՝ եթէ քանի՛ սերտագոյնս պնդէին այսպիսի այցելութիւնք՝ զբարեկամութիւն պետացն արևմտեայց ընդ Լեւոնի։ Նաև 'ի վերջին ժամանակս կենացն՝ մինչ հաստատեալ էր 'ի թագաւորութեանն, ընդունէր նա (1218) հիւրամեծարութեամբ՝ զԱնդրէաս Թագաւոր Ունգարաց 'ի դառնալ նորին 'ի Պտղոմայիդայ՝ երթալ յերկիր իւր․ և ածեալ 'ի Տարսոն՝ հանդոյց բազում շքով և սպասու, ուր և դաշինք խնամութեան եղեն ընդ որդիս իւրեանց։ — Քաջ գիտէր Լեւոն, որ հասարակաց է գիտելի, թէ քանի՛ հզօր են կապանք ազգախառնութեանց 'ի պահպանութիւն պետութեանց և 'ի հաշտութիւն թշնամեաց․ յայն սակս (որպէս բազում անգամ յիշեցաւ), էառ նախ ինքն կին յԱնտիոքեայց մերձաւոր կասկածելեացն, ապա և զԱնտիոքայ պայազատն՝ փեսայացոյց 'ի թոռնագիր իւր․ յետոյ խնամեցաւ երկրորդ մերձաւորացն՝ որ են Կիպրացիք, զդստերս թագաւորի նոցա առեալ՝ զմին իւր կին, և զմիւսն տուեալ Ռուբինի-Ռեմունդի թոռնագրին իւրոյ։ — Դարձեալ, յօդեցաւ և ընդ վեհագունի պետաց կողմանցն՝ ընդ Երուսաղեմացւոյն, տալով զդուստր իւր Ռիթա ըզ-




214․ Կնիք Տեւտոնեան կամ Ալամանն Ձիաւորաց․

ծնեալն յանտիոքացւոյն՝ 'ի կնութիւն Յովհաննու Պրիենայ՝ անուանելոյ Թագաւորի Երուսաղեմի։ Այսպէս ընդ երեսին գլխաւոր պետութիւնս արևմտեայց՝ շաղկապեալ արենակցութեամբ, յաւել և 'ի չորրորդն, (անցեալ ընդ անջրպետ այլադեն դրակցին Իկոնիացւոյ), ընդ նորընծայ յոյն կայսերն Նիկիոյ՝ Լասգարեայ, հարսնացուցանելով նմա զմիւս թոռնիսյն իւր զՓիլիպպինէ, որպէս վերագոյնդ նշանակեցաք։ Այսոքիկ էին հզօրագոյն պետութիւնք քրիստոնեայք՝ փոքր 'ի շատէ մերձաւորք նմին․ իսկ այլ իշխանութիւնք, պարոնութիւնք և կոմսութիւնք՝ թէ և ազնուականք, նուաստագոյնք և նուազագոյնք համարեալ էին․ ընդ որոց սերունդս՝ խնամեցան յաջորդին իւրոյ Հեթմոյ՝ եղբարքն և որդիք և թոռունք։ Բայց ոչ անգիտանայր Լեւոն և զայն, զի փառասիրութիւն և ագահութիւն՝ դիւրաւ խզեն զայդպիսի կապանս, ոչ այնքան խանդակաթ սիրով հիւսեալս՝ որքան քաղաքական հաշուաք և դիտմամբք, որպէս ահա և փորձ Անտիոքեայցն հաւաստեաց․ և զի բարեկամք և հիւրք հեռաւորք՝ դուն ուրեք կարեն ժամանել յօգնութիւն, մանաւանդ 'ի բազմակնճիռն դէպս գժտութեանց դրացեաց կամ յեղակարծ արշաւանաց հզօր թշնամեաց․ ընդդէմ որոց՝ կարօտանայր և ինքն՝ հզօրագունից և առձեռնպատրաստ օժանդակաց, զատ յիւրոց հպատակաց, յորոց շատք՝ լոկ լճութեան կամ մեծարանաց օրինօք յարեալ էին յինքն։

Այսպիսի օժանդակք և նիզակակիցք արժանաւորք նմին և երագահաք՝ էին երեք կարգ Ասպետաց կամ Ձիաւորք անուանելոց՝ այնր ժամանակի․ Ա, Հիւրընկալք կամ Հիւանդապահք, Hospitaliers, և ըստ այսրմ արևմտեայ կոչման՝ յեղեալ յայնժամ և 'ի հայումս՝ Ոսպիթալին ձիաւորքն կամ Ֆրէրքն․ քանզի 'ի սկըզբան եկաւորութեան Խաչակրաց յայսկոյս՝ նուիրեցին ոմանք 'ի նոցանէ զանձինս՝ ոչ միայն 'ի մարտ պատե-

բազմի ընդ այլազգեաս՝ հակառակորդս քրիստոնէից, այլ և 'ի դարման հիւանդաց սոցին և պանդխտաց, վասն այսորիկ այնպէս կոչեցան։ Բ, Տաճարականքն, Templiers, կոչեցեալք 'ի մերոցս՝ Դամփլուն Ձիաւորքն, զի առ տեղեաւ տաճարին Սողոմոնի յԵրուսաղէմ հաստատեցին նախ զտուն իւրեանց։ Գ, Տեւտոնեանք կամ Ալամանք, Teutons, ըստ այլ և այլ կոչմանց Գերմանացւոց ազգի. մարթ է ասել թէ սոքա յետինքս՝ անդէն յերկրի և առաջի Լեւոնի հաստատեցան, յամին 1190, 'ի գալստեան Փրետրիկ կայսեր, 'ի մնացորդաց բանակի նորուն, առաջնորդութեամբ որդւոյ իւրոյ համանուան. ընդ որում եկեալ 'ի Պտղոմայիս՝ անդ հաստատեցին զրուն կարգի իւրեանց։ Սոցա չորրորդ կարգապետ էր (Magister լատինարէն, 'ի մերոցս մայստր կոչեցեալ), Հերման Սալցա Մինիացի, որ 'ի մեծի հանդիսի Զրօրհնեացն 'ի Սիս, յամի 1212, նախադասեալ քան զամենայն աւագորեարն՝ ձիավարէր առ երի Թագաւորին Լեւոնի. որում՝ յառաջ և յետոյ (յամսեան ապրիլի, 1212) շնորհեաց Թագաւորն զատ յայլոց բազում կալուածոց գիւղօրէից, և բերդս անուանիս, զԱմուտա և զԳմրէթփոր, և աւան մի՝ պէսպէս օրինակաւ գրեալ Այն, Ayn, Aym, Hœion, յերկար բանիւք ճշգրտելով զսահմանս նոցին, որպէս յիշեալ է մեր 'ի ստորագրութեան տեղեացն։ Բազում գորովով գրէր Լեւոն և 'ի հրովարտակի իւրում՝ վասն սիրոյ և երախտեաց ազգի նոցին՝ յորոյ կայսերէ զթագն ընկալաւ, և վասն մակաբեան քաջութեան նոցին և ինքեան նիզակակցութեան, նորայրակից ևս լինէր նոցա, և շնորհէր ազատութիւն բնակութեան՝ ուր և կամիցին յերկրի իւրում, առանց ուրուք նեղելոյ զնոսա, և այլն։ Յետ նորա յաւել և յաջորդ իւր Հեթում՝ պարգևել սոցա զմեծ բերդաւանն Հարուն. առ որովք, և 'ի սահմանս Սարուանդիքարի, էր նոցա հաստատեալ բաժաուն, որպէս եցոյց պայման-նամակ տեառն տեղւոյն, յամի 1271. և այս յետին ծանօթ զրաւոր վկայութիւն է կալոյ մնալոյ ասպետացն յերկրի Սիսուանայ ցայնժամ։

Ոչինչ պակաս 'ի սոցանէ մեծարոյ, սիրելի և պիտանի էր Լեւոնի երիցագոյն կարգ Ասպետաց՝ Հիւանդանոցին, որք և վաղագոյն քան զայլորոյլին նուաճումն Կիլիկիոյ 'ի մերայոցս՝ հաստատեալ էին յերկրի անդ, որպէս ցուցանեն պարգևագիրք Բրնձաց Անտիոքայ, անդստին 'ի կիսոյ ԺԲ դարու (1149), շնորհելով նոցա զՄարասու գիւղ 'ի գաւառին Մսսոյ. իսկ Լեւոն պարգևեաց նոցա՝ յամի 1210, զմեծ քաղաքն Սելեւկիա, և բերդս նշանաւորս՝ զՆորբերդ և զԿամարտիաս, և թերևս զբովանդակ գաւառն Սելեւկիոյ, կամ զմեծ մասն խաւրիոյ. և թէպէտ հարկ եղև նոցա յետ մահուն Լեւոնի, առ նրբագոյն քաղաքականութեան հրահանգաց, վաճառել անդրէն զՍելեւկիա՝ Կոստանդնի Պայլի, սակայն մնային 'ի վիճակի անդ յայլ կալուածս և ամուրս իւրեանց. որպէս զի մինչև 'ի յետին ժամանակս Թագաւորութեան Հեթմեանց, յամի 1330, Թղթակցութիւնք լինէին ընդ արքունիս Սսոյ և ընդ Հռովմայ, վասն տալոյ յԱսպետսն՝ բերդորայս ինչ, զորս Լեւոն Դ՝ ոչ ևս յուսալով զերծուցանել 'ի բռնաբարութենէ այլազգեաց՝ վաճառել կամէր։ Այլով հրովարտակաւ 'ի նմին 1210 ամի՝ խոստանայր Լեւոն պարգևել Ասպետացս և զԼարանդա քաղաք՝ յորժամ թէ Աստուծոյ յաջողելովն՝ կորզեսցէ յայլազգեաց. և զտուրս զայսոսիկ՝ ինքնակամ խնդրուածով՝ վաւերացուցանէր կոնդակաւ Սրբազան Քահանայապետին (Իննովկենտի Գ)։ Դարձեալ յետ ամաց (1214) առեալ յասպետացն փոխ 30,000 ոսկի բիզանդ, տայր 'ի գրաւական զվանըր աւան 'ի Մլուն գաւառի, և զբովանդակ գաւառն Ճկերոյ, մեծամեծ գիւղորայիւք և նաւակայիւք. այսմ յետկարի՝ զատ յայլոց իշխանաց՝ ստորագրեցին և ասպետքն, չորեքտասան թուով յիւրաքանչիւր անուանէ։

Հանգոյն սոցա՝ և Տաճարական ասպետաց կանուխ մուտ գտեալ էր 'ի Կիլիկիա, և ձեռն օգնութեան տուեալ Բ Թորոսի 'ի թափել զերկիրն. որոյ եղբայրն Մլեհ եղ-




215. Կնիք Ձիաւորաց Հիւանդանոցին.

բայրացեալ իսկ էր երբեմն նոցին, և ապա կարգուրաց լեալ. բայց մերումս Լեւոնի ոչ հաճոյացան սոքա, այլ և ընդդէմ նմին դարձան և ձեռն ետուն յԱնտիոքացիս, և իբրև ամս հնգետասան կագ և գժտութիւն էր ընդ նոսա և ընդ Թագաւորն, որպէս յերկարագոյն 'ի կարգին նշանակեսցի. այլ ուր ուրեմն հաշտութիւն եղև, և տեւեցին և սոքա ևս 'ի Սիսուան, գէթ ցմեծ արշաւանն Եգիպտացւոց (1266). բայց և յետ այնր՝ յամի 1275 վկայի երեւումն ևս կարգաց ասպետացն ունել կալուածս 'ի Հայս, ըստ կոնդակի միոյ Գրիգորի Ժ Պապի (13 մարտի, 1275)։




216. Կնիք Տաճարական Ձիաւորաց.

Միւս և մեծագոյն ևս դաս օժանդակաց Լեւոնի էին տեղաբնակ և տեղատէր Պարոնայք օտարազգիք, որք և համարէին նմա լինել կամ արգադիրք. ոմանք յառաջ քան զպայազատելն իւր հաստատեալք յերկրին, և չառք առ իւրև, կամ ինքնակամ տուեալ զանձինս նմա 'ի ծառայութիւն և ընկալեալ 'ի նմանէ կալուածս, կամ հրաւիրեալք 'ի նմանէ՝ նովին պայմանաւ։ Ակն արկցէ ընթերցողն յանուանս քառասունևհինգ պարոնայցն հանդիսացելոց 'ի Թագակապութեան Լեւոնի, և սփռելոց գրեա-

թէ յերեսս բովանդակ երկրին Սիսուանայ, և տեսանէ՝ զի գրեաթէ մեծ կէս նոցին օտարազգիք են, Ցոյնք կամ Ցունահայք, (որպէս Կիռ Սահակ, Միխայլ, Նիկիփոր, Ռոմանոս, Խռստֆոր, և այլն), կամ փռանկք և Ալամանք, (որպէս Տանկրի, Ճօֆրի, Ռոպերտ, Պալտին, Հեռի, և այլն). յորս յաւելան յետ սակաւ ամաց, 'ի մեռանել Պեմունդի Գ, ոմանք յաւագաց նորին և 'ի պաշտօնէից. այսինքն Ջամբռլայ Բրնձին՝ Ոլիվեր (Olivier), պօղլերն՝ (տաճարապետ) Բայէն, Թոմաս Մալըպրէօն, Ռոճեր տէ Մոնտ կամ Մոռտ (Rogerius de Monte), Կիյլոմ Տըրի, Ջուարտ?, թերևս Արշիվալտ որդի սեննեսկալին Անտիոքայ, և Գուլիելմ (de Turre)։ Նա և 'ի պաշտօնեայս դրան իւրոյ էին ոմանք յօտարազգեաց անտի. զՅունաց յայտնապէս գրէր առ նա Ներսէս Լամբրոնեցի. « Այս » Հելլենացւոց ազգս՝ ոչ թէ առ մեզ միայն ունին մուտ » և ել՝ 'ի սուրբ եկեղեցի, այլ և 'ի ձեր արքունական ա- » պարանսն՝ ունին 'ի ձէնջ իշխանութիւն և պատիւ »։

Որքան ինչ ծառայութիւն կամ պարտականութիւն էր սոցա առ Լևոն, ոչ գիտեմ. այլ միայն զի լծութեան օրինօք կապեալ էին ընդ նմա, ըստ սովորութեան անուանեալ Ասսիզացն Երուսաղեմի և Անտիոքայ։ Էին և գերագոյնք ոմանք 'ի նոսին, և ընդարձակութեամբ կալուածոց իւրեանց և ազատութեամբք. բաժտունս ունելով յերկրի իւրեանց, յանցս լերանց և գետոց, անկախ յարքունի իրաւանց, որպէս ինքնին ծանուցանէ Լևոն 'ի պարգևագրին առ Գենուացիս, յամի 1215. որոց գլխաւոր՝ և առաջին ամենայն Պարոնայց պետութեանն՝ էր Սիր Ատանն, Ատոմ ևս կոչեցեալ, վերատեսուչ ծովեզերեայց[1], և տէր այնքան ընդարձակ երկրի 'ի կողմանս Խաւրիոյ և Պամփիւլիոյ, մինչև կոչիլ Աշխարհ Սիր Ատանայ. և որպէս սա յարևմտակողմանն, երկրորդն իշխան՝ Աւստ գրեալ 'ի հայում, Oste կամ Hostius de Tabaria, ունէր ընդ ձեռամբ յարևելակողմն երկրին Սիսուանայ՝ զգաւառն Ճկերոյ. սոցին հանգոյն բաժտառուտեարք էին՝ Լևոն տէրն Կապանայ, և Վահրամ մարաջախտ՝ տէրն Կոռիկոսի. և սա օտարազգի թուի, զի եղբայրն կոչի Ժոսլին (Juzulinus ըստ հրովարտակին Լևոնի), և հայրն՝ Գերվաս (Gervais), տէր Սերմնոյ կամ Սարմենիայ, որ և թուի վերոյիշեալ սեննեսկալն Անտիոքայ և հայր Արշիվալտի։ — Որպէս պետական զարմն Լևոնի ընդ օտարազգի պետաց խնամեցաւ, այսպէս և պարոնայք Հայոց և օտարաց՝ ընդ միմեանս, և փոխառաբար 'ի հայ և 'ի փռանկ անուանս կոչէին որդիք նոցա։

Ընդ հաստատարնակ օտարացս՝ որք յետ սակաւուց բնիկք եղեն երկրին Սիսուանայ, ձգեաց Լևոն այսր՝ զանհաստատ կամ եկարնակս, 'ի բազում ազգաց և պետութեանց արևմտեայց, այլ և սակաւս ոմանս յարևելեայց. զկէսս սոսկ քաղաքատեսական կցորդութեամբք, զայլս վաճառաշահութեան աղագաւ։ Յառաջնոցն կարգի են՝ երթևեկք դեսպանաց այլ և այլ պետութեանց, զորոց յոգունց պէտս՝ անձամբ ետես Լևոն յարևելս. որպէս, զկայսրն Ալամանաց, զթագաւորս փռանկաց, Անգղիոյ, Ունգարաց, և զմերձաւորացն՝ Երուսաղեմի և Կիպրոսի, թող զայլոց իշխանաց նոցին որք յայսկոյս ծովու. և յայտ է՝ եթէ առաքէր առ սոսա թուղթս և դեսպանս. որպէս յայտնապէս յիշին՝ բազում անգամ դեսպանութիւնքն առ կայսր Ալամանաց, առ թագաւորն Ունգարաց, առ Քահանայապետն Հռովմայ[2]. զատ յայսցանէ յիշի և դեսպան Դքսին Աւստրիոյ եկեալ առ Լևոն (1211)։

Ըստ երկրորդ կարգի, այն է վաճառակցութեամբ, գլխաւորք էին Իտալացիք 'ի Սիսուան, առ թագաւորութեամբ Լևոնի, յամենայն ազատ վարչութեանց և քաղաքաց իւրեանց, և յաճախագոյն Վենետկեցիք և Գենուացիք, առ որս առաջին պարգևագիրք կամ պայմանք դաշանց են Լևոնի, յամի 1201. հաւանօրէն և յառաջ քան զթագաւորութիւն նորա ծանօթ էր սոցա Կիլիկիա. և ոչ սոցա միայն՝ այլ և Պիզացւոց, թուի թէ և Ամալֆիացւոց, ապա և յոլովից այլոց՝ զորս նշանակեցաք 'ի տեղագրութեանն Այասայ նաւահանգստին, որ չև ևս էր առ Լևոնիւ հռչակեալ. այլ յարևմտեան ծովեզերս՝ մատչէին նոքա 'ի Սելևկիա, 'ի Կոռիկոս, 'ի Տարսոն, յԱլայա, յԱտալիա, և այլն. և 'ի միջերկրեայսն՝ շնորհեաց նոցա Լևոն տեղի բնակութեան և եկեղեցւոյ շինութեան 'ի Տարսոն, 'ի Սիս և Մսիս, և համարձակ ազատութիւն երթևեկի, թեթևութիւն հարկաց և բաժից, և ոմանց՝ գրեաթէ յամենայնէ յայսոցիկ անպարտականս լինել։ Եւ այս ամենայն՝ որպէս զի յօժարութեամբ և յաճախագոյն եկեսցեն յերկիր իւր, 'ի բարգաւաճանս և 'ի ճոխութիւն նորին, շահավաճառին և ընտանութեամբ արևմտեայ կրթագոյն ժողովրդեան, միանգամայն և 'ի հարկի ժամու՝ զօրավիգն լիցին ինքեան և օժանդակք՝ նաւուք և զինուք և այլովք պիտոյիւք։

Ոչ յարևմտեայց միայն՝ այլ և յարևելեայց՝ ընտրութեամբ հնարեցաւ Լևոն դաշնակիցս և բարեկամս ունել. նախ զինքնակալն Կոստանդնուպօլսի, յորմէ և թագիւ պատուեցաւ. ապա 'ի նուաճել արևմտեայց զմեծն զայն քաղաքամայր, զնորընծայ կայսրն Նիկիոյ, զոր և տեսաք փեսայացուցեալ 'ի դուստր եղբօր իւրոյ։ Ունէր մտերմութիւն և ընդ հեռաւորսն այլազգեաց, ընդ Ամիրապետին Պաղտատայ, և ընդ մերձագոյնն քան զայն՝

1 Ըստ վկայութեան Ապուլֆարաճի Ասորւոյ ժամանակագրի։

2 Ի թղթոցն Լևոնի՝ միայն գրեալքն առ Իննովկ. Գ Պապ, մեզ կամ ծանօթ են՝ լատիներէն պատճէնքն, և այն եօթն ևեթ, մինչ եռապատիկ աւելի կան թուղթք Պապին առ նա. նոյնպէս և 'ի պարգևագրացն առ Ասպետս և առ վաճառականս՝ ծանօթ են եօթն ևեթ։ Իսկ դեսպանք առաքեալք 'ի նմանէ, ազգայինք և օտարազգիք, ծանուցեալք, են յամս,

1187? Ա. Ա. առ Փրետրիկ կայսր Ալամանաց.

1190 Կոստանդ և Պաղտին Կամարտիասք, առ նոյն.

— Ներսէս Լամբրոնեցի և Գէորգ Սկևռացի, առ նոյն.

— Հեթում Սասնեցի, առ նոյն.

1196 Ա. Ա. առ Էնրիկ Զ կայսր, 'ի Միլան.

1197 Ներսէս Լամբրոնեցի և Հալկամ, 'ի Կ. Պօլիս.

— Յովհաննէս արքեպիսկոպոս Սսոյ (յետոյ կաթողիկոս), առ քարտուղար կայսեր, 'ի Պտղոմայիս.

1199 Կոնրադ արքեպիսկոպոս Մոգունտիոյ առ կայսր և առ Պապ.

— Ռոբերտ Մարգատ (de Margat), առ Պապ.

1201 Կառնեբ ասպետ Տեւտոնեան, առ Պապ և առ արքայն փռանկ.

1204 Կոստանդ Կամարտիաս, առ Նուիրակս Պապին, 'ի Պտղոմայիս.

1210-1 Հեթում-Հեղի (եղբայր Ն. Լամբրոնեցւոյ), Արշիվալտ և Բաւոն, առ Պապն և առ Օթոն կայսր.

1218 Ճօսլին Ջամբռլայ, ընդ Անդրէասայ թագաւորի յՈւնգարս։ — Սորա ամենեքեան յիշեցին յընթացս պատմութեանս. այլ անյիշատակքն և անծանօթք՝ աներկբայապէս բազմաթիւ ևս էցեն։

սուլտանն Կարնոյ (Տուղրիլ շահ)։ Բայց ոչ նոյնպէս ընդ ամենայն սահմանորդսն, ընդ սուլտանսն և տեարս Իկոնիոնի, Կեսարիոյ և Ալպստանայ, վասն քինուն Խլիճարսլանայ. զորս և բազում անգամ նեղէր իսկ մարտիւ և համառօտ վիճակաց նոցին, և մերթ ձեռնունայն դառնայր, կամ անդրէն յետս դարձուցանէր զոր կորզեալն էր 'ի նոցանէ։ Ոչ կարէր և վասն քինուն Սալահէտտինի՝ բարեկամ լինել սուլտանաց Եգիպտոսի և Հալպայ. այլ քանզի ընդ սոցայն և ընդ իւրն երկիր՝ անջրպետք կային պետութիւնք և գաւառք քրիստոնէից Լատինաց, զսոսա շատ համարէր 'ի նախապարիսպ Սիսուանայ։

Գ. Բայց քան զոտարս նուաճել 'ի սէր և յանդորրութիւն, թերևս դժուարագոյն էր Լեւոնի՝ զազգայինսն 'ի նոյն օրէնս ընտելացուցանել, վասն ինքնահաճ նպերտ բարուց և անհլութեանն առ համազգի վեհագոյն, որք դիւրընկալք օտարին ծանր լծոյ գտանին, քան ընտանւոյն թեթև հարկի. 'ի բարձրանալ գլխոյ ուրուք 'ի միջի իւրեանց, թէպէտ և արդեամբք և իրաւամբք, գոգ օրէնս իմն վարկանին և գիւրեանցն ամբառնալ գագաթունս, և եղջիւր ածել իրերաց։ Այլ աստանօր՝ իրաւունք, խորագիտութիւն և պնդասրտութիւն Լեւոնի՝ յաջողեցան յամենայնի. իրաւունք, զի արեան և քրտանց իւր և հարց իւրոց գին էր մեծ մասն երկրին՝ որում տիրէր, և զոր յայլազգեաց կորզեալ էին, յաւէտ 'ի Յունաց և 'ի Թուրքաց, և պարգևեալ վիճակս վիճակս արժանաւորաց անձանց, ըստ աւատական օրինաց. որոց հարկ էր ամենայնիւ զնոյն օրէնս լճութեան հաւատարմութեամբ պահել առ կալուածատուն, ապա թէ ոչ ապստամբք և մեղապարտք համարէին։ Ի սոցանէ չկայր մեծ ինչ խէթ Լեւոնի, զի և տեսանեմք զպարոնայսն յօժարութեամբ յանձն առեալ գիշխանութիւն նորին, որպէս յառաջագոյն զեղբօր նորա Ռուբինի. և ո՞ իսկ իշխէր 'ի փոքունց անտի և նուաստից՝ ընդդէմ այնքանոյ աւագի և հզօրի յաւակնել։ Բայց էին էին և այլք ոմանք աւագագոյն պարոնայք և բերդատեարք, որպէս յայտ առնեն բանք պատմագրաց մերոց, որք ոչ 'ի Ռուբինեանց անտի, այլ 'ի նախնի տեարց երկրին՝ 'ի կայսերաց Բիւզանդիոնի՝ վիճակեալ էին գաւառաց և բերդից, կամ՝ անձանց ջանիւ և քաջութեամբ տիրացեալ. զոր օրինակ, ծանօթքն՝ Ապլղարիպեանք և Հեթմեանք, տեարք Լամբրունի և Պապեռօնի, Նաթանայէլեանք՝ տեարք Ասկուռասայ, հաւանօրէն և այլք. սոքա ոչ համարէին զինքեանս պարտականս պայազատաց Ռուբինի, և յանձինս կամ 'ի կայսր ապաստանք՝ յուսային պահել զվիճակս իւրեանց։ Այսոքիկ էին ժայռք դըժուարամատոյցք 'ի ծաւալական պետութեան Լեւոնի, զորս հարկ էր նմա՝ ըստ դիտման իւրում՝ հարթ հաւասար առնել. և առ այս պէտք էին խորագիտութեան և պնդութեան։ Ոչ յիշէ պատմութիւն յանուանէ զայսպիսիս, բայց 'ի միոյ կամ յերկուց, և յայտ է թէ շատք, եթէ գոյին, կամաւ յանձն առին փոխանակ կայսեր՝ նմա մատուցանել հնազանդութիւն, ոչ այնքան 'ի հեռաւոր տկար ձեռանէն անկասկածք, որքան 'ի մերձաւոր հզօրէն պակուցեալք։ Մնայր միայն յայտնի ազատասէր՝ ամուրն Լամբրուն, որ բազում անգամ նեղեալ և պաշարեալ՝ տոկաց տևեաց ընդդէմ բռնութեան Ռուբինեանց. և ոչ ինքն իսկ Լեւոն վստահացաւ պատերազմական հնարիւք խոնարհեցուցանել զայնպիսի բարձրութիւն. այլ զառաջինն երկուստեք կասկածն և պատշաճ 'ի հաւանութիւն ածին զՊարոնաց պարոնն՝ ընդ ազնուազունին Պարոնայց՝ Հեթմոյ (տեառն Լամբրունի), զոր կանխաւ ևս եղբայր նորին Հեթմոյ՝ աւագատեսն Ներսէս՝ 'ի թըղթեանն և 'ի յիշատակարանս՝ խոստովանէր տէր և թագաւոր իւրեանց։ Ապա չկայր յայնժամ խէթ մեծ առ արտաքին երեսս՝ և յայսմ կողմանէ, և մարթ էր ժամանակաւ խափանել զայն, որպէս և արարն Լեւոն, ըստ որում տեսցի յետոյ։

Արդ այսպէս 'ի դէպ է ասել, եթէ յառաջին ամս պայազատութեանն, տիրաբար տարածանէր Լեւոն զձեռս իւր 'ի դրանց Սելեւկիոյ մինչև 'ի դրունս Անտիոքայ, և 'ի ծովեզերաց այնր երկայնութեան՝ մինչև 'ի Տաւրոս և յԱնտիտաւրոս, հատանելով զաշխարհս Պամփիլիոյ, Իսաւրիոյ, Լիկայոնիոյ, Կաղաոնիոյ և Գերմանիկիոյ. ամենեքեան որ 'ի նոսին մեծ և փոքր իշխանք և տեարք՝ հնազանդութիւն մատուցանէին նմա, որ շատ որ սակաւ, այլ զնա ճանաչէին վեհագոյն տէր երկրին։ — Ի սոցին սակի համարելի են և գլխաւորք եկեղեցւոյ, եպիսկոպոսունքն, եթէ գոյին և 'ի նոսա՝ որպէս յետոյ՝ տեարք վիճակաց և կալուածոց. հասարակաց էր հրահանգ օրինին. և որպէս երևեցաւ 'ի դէպս ինչ 'ի հարստութեան Բագրատունեաց՝ գերիշխանութիւն թագաւորին՝ յընտրութեան և յընկեցման հայրապետի, և 'ի խնդիրս որ յայն սակս, զնոյն և Լեւոն յանձին բերէր և յառաջ իսկ քան զթագաւորութիւնն, թէ և փոքր ինչ մասն երկրի էր նորա՝ առ ընդարձակութեամբ աշխարհաց՝ յոր սփռեալ էին ժողովուրդք և եպիսկոպոսունք ազգին՝ ընդ այլ և այլ պետութեամբք. այլ զի ինքն էր աւագագոյն քան զամենայն հայ իշխանս ժամանակին, ուր ուրեք և գոյին, և յետոյ թագաւոր ևս եղև, և միակ Հայ թագաւոր, և զի աթոռ կաթողիկոսին գրեաթէ առ կռան կայր սահմանաց տէրութեան իւրոյ ('ի Հռոմկլայ), և միանգամայն ասել, զի հզօր էր, և ամենեքին ակն ածէին 'ի նմանէ, աւագօրէն գործեաց և յայսմ տեսչութեան։

Տեսաք 'ի պատմութեան եկաւորութեան Փրետրիկի զգլուխ Հայաստանեայցս եկեղեցւոյ՝ հրաւիրեալ 'ի Լեւոնէ, և ընդ իւր հանդերձեալ ընդ առաջ ելանել կայսեր. զնոյն՝ և առ որդի նորին առաքեալ՝ 'ի հիւանդութեանն. և զոյգ նմին թուղթս ընկալեալ 'ի Քահանայապետէն Հռովմայ։ Ցամենայնի մտերիմ Լեւոնի երևի կաթողիկոսս այս Գրիգոր Տղայ, որ յաւուրս Մլեհի բռնակալութեանն յաջորդեալ էր զՍ. Ներսէս Շնորհալի, և 'ի մահուն (16 կամ 25 մայիսի, 1193), ինքնին Լեւոն ընդ Ս. Ներսիսի Լամբրոնեցւոյ հանգոյց զնա 'ի դամբանս Դրազարկու, զի անդ հանդիպեցաւ նմա օրհասն [1]։ Երևի հեղինակութիւն Լեւոնի և յընտրութեան յաջորդի նորին և քեռորդւոյ՝ մանկահասակն Վահրամայ՝ Գրիգո-

1 « Ընդ հանգուցաք զնա 'ի տապանի (գրէ Լամբրոնեցին), ապաստաւորութեամբ իմ Ներսիսի և բարեպաշտ իշխողի մերոյ Լեւոնի »։

րիս կոչեցելոյ. քանզի ասէ Լամբրոնեցին առ նա. «Ձեր
» աստուածպաշտութիւնդ՝ կոչեաց զմեզ 'ի մանուկ կա֊
» թողիկոսին ձեռնադրիլն». այլ առաւել հեղինակօրէն
վարեցաւ 'ի գահընկէցութեան կամ յարգելման Նորին։
Քանզի, ըստ պատմչիս մերոյ, սա «Յորժամ եղև կա֊
» թողիկոս՝ ոչ տանէր զառաջին հնազանդութիւնն ամե֊
» նեցուն, որպէս յորժամ ընդ դաստիարակաւ էր. այլ
» ինքնիշխանութեամբ տանէր զհայրապետութիւնն, որ֊
» պէս տեսեալն էր 'ի քեռին իւր։ Յայնժամ մախացեալ
» ընդ նա աւագագոյն մարդիկն, առաքեն առ Լևոն և
» ասեն. Ոչ ունի սա իմաստութիւն՝ վարել զհայրապե֊
» տութիւնն՝ որպէս արժան է։ Եւ յօդեցին որպէս կամե֊
» ցան զնմանէ. և զայս արարին միանգամ և երկիցս և
» երիցս. մինչև շարժեցին զԼևոն 'ի կամս իւրեանց։ Եւ
» առաքէ 'ի բերդն Հռոմկլայն՝ զարքեպիսկոպոսն զՏէր
» Յովհաննէս՝ առնել ըստ իմաստութեան իւրում. և նա
» գնացեալ անդ, և մտեալ առ կաթողիկոսն պատուով,
» և մեծարեալ որպէս զհիւր և զազգային։ Իսկ նա
» ձեռնտուութեամբ սպասաւորաց Նորա, մինչդեռ էին
» նստեալ 'ի սեղանն 'ի ժամ ճաշոյն, ետ փակել զդրունս
» բերդին. և տարածեցաւ աղմուկն. և հայրապետն զար֊
» հուրեցաւ. և ասէ ցՏէր Յովհաննէս. Զի՞նչ է այս զոր
» լսեմս։ Եւ նա ասէ. Բռնած ես։ Եւ կալեալ զնա եդին
» յարգելանի, և ամրացուցին պահապանօք։ Եւ իբրև
» տարածեցաւ համբաւն յարտաքին բերդն և 'ի ներքին
» չէնն, հասին ամենեքեան զինուք 'ի վերայ կլային, առ
» 'ի յօգնութիւն հայրապետին իւրեանց. և զաւուրս ե֊
» րիս պատերազմեցան ներքս, և ոչ ինչ կարացին առ֊
» նել, և ապա խաղաղացան։ Եւ առեալ Տէր Յովհաննէս
» զդատապարտեալ հայրապետն՝ եբեր առ Լևոն. և ե֊
» դին զնա 'ի պահեստի 'ի բերդն Կոպիտառ, ժամա֊
» նակս ինչ կալ անդ»։ Աստանօր ոչ է մեզ քննել զգործս
տղայ հայրապետին, այլ զԼևոնի. որ ըստ յետին բանից
պատմչին, երևի 'ի խրատ Նորին առ ժամանակ մի ար֊
գելուլ կամեցեալ զմանուկ կաթողիկոսն, և ժողովով
քննել զգործսն, ըստ եկեղեցական իրաւանց. վասն այ֊
սորիկ և հանդերձ այլովք կոչեաց յայս գործ զանհրա֊
ժարելին Ներսէս Լամբրոնեցի. այլ սա՝ թէպէտ ոչ հա֊
ւան ընդ խակագործութիւնս տհաս հայրապետին, որպէս
և ոչ ընդ ընտրութիւնն, այլ անհաւան ևս ընդ այսօրի֊
նակ տարամերժումն և ընդ ծագելի հակառակութիւնս,
ոչ կամէր երթալ 'ի ժողով, որ լինելոց էր ատեան դա֊
տապարտութեան եկեղեցական գլխոյն, թէ և տկարի.
մինչև հնգիցս գրելով Լևոնի՝ բռնադատեաց եբեր եմուծ
զերանելին յատեանն, և հաւանեցոյց ընդ բազմութեան
եպիսկոպոսացն՝ աթոռանկ գրել զանբաւականն տիօք և
մտօք. զոր և ստուգիւ յայտ արար սա, դիւրահաւանու֊
թեամբն թելադրութեան համախոհիցն, փախչելոյ յար֊
գելանէն. «Որոյ անկեալ 'ի բանս Նոցա մանկաբար, և
» առեալ կտաւ՝ կախեցաւ 'ի գիշերի՝ իջանել 'ի բերդէն.
» և կտաւուն անկն բեկեալ՝ պատառեցաւ, և անկեալ 'ի
» խոնարհ՝ բարձաւ մեռեալ. և առեալ տարան 'ի Դրա֊
» զարկն, և անդ թաղեցին զնա մերձ առ դամբան քե֊
» ռոյն իւրոյ» (1194). վասն այսորիկ մականուանեցաւ
Քարավէժ։ Չիք երկբայել զի Նորին Լևոնի համակամու֊
թեամբ, և թերևս 'ի նմին ժողովի՝ որ գումարեալ էր
վասն տարաժամ մերժելոյն, ընտրեցաւ ծերունին Գրի֊
գոր Ապիրատ, եղբօրորդի Սրբոյն Ներսիսի Շնորհալւոյ։

Դ. Կարգ բանիցս, մանաւանդ թէ դիպացս, հարկ առ֊
նէ աստանօր՝ զամ մի ևս յանդիման իրերաց կանգնեալ
նկատել՝ զերկոսին աւագագոյն անձինս ժողովոյն և ժա֊
մանակին, զԼևոն և զՆերսէս. որք և յամենայն մեծա֊
մեծ գործս աշխարհին նախաձեռն գտան. մին՝ ինքնայօ֊
ժար կամօք և խրոխտաբար, միւսն՝ կիսակամ և հեզա֊
բար. մին՝ հաւասարապէս հանճարեղ և յանդուգն՝ հա֊
մարձակէր ցոր վայր մարթէր, թերևս և անդրագոյնս.
զմիւսն՝ հրաւիրէր և ստիպէր ինքնին արժանաւորութիւն
հանճարոյն և սրբութեանն. որով և 'ի միջի վեհագունիցն
աթոռով և պատուով և տիօք՝ վեհագոյն գտանիւր. որ֊
պէս 'ի ժողովին Հռոմկլայ կամ Տարսոնի (1179), 'ի դես֊
պանութիւնս առ կայսերս և առ այլս. և յայսմ իսկ ժողո֊
վի դատապարտութեան Գրիգորի Ե. որ որքան և արդա֊
րացի էր գործ, 'ի շինութիւն մեծի եկեղեցւոյ ազգին, որոյ
էին իբրև հարիւր եպիսկոպոսունք, ընդ անխոհեմ վար֊
չութեամբ մանկան միոյ, սակայն և դժպհի էր անդամոց՝
զօծեալն և զմեծափառ գլուխ՝ 'ի բաց մերժել. և որպէս
սովոր է մարդկան, մանաւանդ լեզուանեաց և նենգաւո֊
րաց, յայսպիսի աղիտագոյն և գոռովախառն դէպս՝ ըստ֊
գտանել և երգիծանել զգործադիրսն ոմանս, զորս հե֊
զագոյնս տեսանիցեն, մանաւանդ եթէ և կանխաւ խէթ
ինչ ունէին ընդ նմա, սկսան և այժմիկ (առաւել՝ հեռա֊
ւորքն որք 'ի Մեծ Հայս) մախալ ընդ Լամբրոնեցին, որ֊
պէս ծանուցանէ ինքնին գրելով համարձակ առ Լևոն.
«Այնր աւուր խաժամուժն՝ 'ի քո իշխանութենէդ զան֊
» գիտեցին, և զմեզ՝ նպատակ նախատանաց՝ փոխանակ
» քո արարին, և զամբոխեալ ոգիսն և զնախանձն՝ ընդ
» ինքեանս շարժեցին». 'ի գլուխ Սրբոյն կուտելով զա֊
մենայն եպերանս՝ եթէ զոյր ինչ եպերելի։ Իսկ սա՝ ոչ
զյաչադկոտացն միայն՝ այլ և զնորին իսկ Լևոնի նշաւա֊
կէ աստանօր զդայթ 'ի գայթի գնացս. որ՝ երևի իմն ըստ
աշխարհիկ քաղաքական խորագիտութեան կամ անձնա֊
սիրութեան, առ 'ի թօթափել յանձնէ զամենայն ըստ֊
գիւտ, անպատապար թողեալ զայր՝ զոր հնգակի պատ֊
գամօքն հրաւիրեաց 'ի խորհուրդ և 'ի գործ. և զի ոչ այ֊
սորիկ աղագաւ միայն, այլ և վասն բազում այլ ինչ իրաց՝
հեթեթանօք ամբաստանէին զՆերսէս, իբրու նորաձևու֊
թեանց մուծիչ, փոխանակ բարեձևութիւնս խոստովա֊
նելոյ, դարձեալ շարժեցին զԼևոն, զէթ 'ի վերին երեսս,
երկմտել իմն 'ի նմանէ, զոր գերահանճար քան զամենե֊
սին յուխտի եկեղեցւոյն ճանաչէր, գոգջիր և քան զճար֊
տարագոյնս 'ի քաղաքայնոցն, որպէս և ինքն քաջ քան
յայլոց՝ 'ի նմանէ կշռադատեալ լինէր զարժանեացն. և
երկիցս գրեաց առ Սուրբն և Սիրելին, համարս իմն պա֊
հանջելով և պատասխանիս զամբաստանութեանցն եղե֊
լոց, իբրու 'ի հեռուստ լսելով, 'ի Հաղբատայ և 'ի Քոբ֊
այրայ, և յանկարծոյն իմն անտես լինելով նորայոցն
ակնյայտնի և մերձաւոր գործոց ուղղութեանց։ Ստի֊
պեցաւ Սուրբն լուծանել մի անգամ ևս զպարկեշտ լռու֊
թիւնն, և ոչ առ ամբաստանողսն չարալեզուս, այլ առ

ունկնդիր բամբասանացն՝ առ Լեւոն ինքն՝ ուղղել Թղթով զբանսն, զմի 'ի հրաշագոյն գրուածոց իւրոց և համօրէն անձնական ջատագովութեանց. զորս զօրպխութեամբ զանց արարեալ 'ի տեղւոջս, միայն զպատշաճն պատմութեանս յուշ արասցուք. զի ցուցանէ՝ ոչ ինքնահամարձակ ինչ արարեալ յայնմ ժողովի, այլ համաձայնեալ արարելոցն 'ի նմին Լեւոնէ կամ Լեւոնիւ. ուր՝ յիշէ ընդ աղօտ՝ և այլ ինչ գործս արարեալ Լեւոնի՝ 'ի նոյն դէպս կալանաց տղայ կաթողիկոսին, զմեռանել ոմանց 'ի Հռոմկլայն՝ յեռօրեայ հակառակութեանն եղելոյ ընդ բերդացիս և ընդ արտաքինսն, և Լեւոնի պահանջել և առնուլ տուգանս, նաև յայնցիկ կամ վասն այնցիկ՝ որ ազգականք էին Ներսիսի, և սմա անկ էր ժառանգութիւնն[1]. « Բայց իբրև Աստուծոյ հրամանին, (ասէ), իշխանութեանդ հնազանդեցաք, և հաւատացաք Աստուծոյ տալ » քեզ իմաստ առ 'ի նոյն, գիտել զթերութիւն անձին. » զոր և աղօթեցաք, և առաք զպտուղ աղօթիցն, ըստ » որում և եդ բարեսէր »: Բայց ոչ 'ի սպառ կարճէ և զյանդիմանութիւնն. « Ճշմարտութիւնս մեր, զոր դու ա» չօք ես տեսեալ և վայելեալ, վասն նոցին զրպարտե» լոյն՝ երգիծանեմ... Հեռի արասցէ Աստուած 'ի քէն » զՊիղատոսի դատողութեանն ճանապարհ:.. Թէ քո » աստուածպաշտութիւնդ արժանացոյց զնոսա պատաս» խանւոյ, մեր իմաստութիւնս՝ ոչ բնաւ. զի խրատիմք՝ » ոչ տալ անզգամին պատասխանի ». և այլն: Ճշմարտութեան՝ քան անձին ջատագով, ոչ պատկառէր Ներսէս՝ զայն զոր Թագաւորապէսն պատուէր՝ մանկաբար խրատել՝ բանիւ և Թղթով, անահ յամենեցուն ահարկուէն Լեւոնէ[2]. որ, որպէս ակնարկեցաք, առաւել առ երեսս գործէր, առ 'ի չահել զհեռաւորսն ևս, կամ առ 'ի միաբանել՝ եթէ հնար էր՝ զամբաստանողսն և զամբաստանեալսն, քան թէ խորէր և օտարանայր 'ի Սրբոյն. զորոյ յարգ և վարկ՝ դարձեալ յետ սակաւուց յայտ արար՝ անմոռաց ունել 'ի մտի և 'ի սրտի, թագընկալութեամբ յեկեղեցւոջ նորին 'ի Տարսոն, և դեսպան առաքելով 'ի դուռն կայսեր արևելից, որպէս ցուցցէ կարգ պատմութեանս:

Ոչ ինչ պակաս և Ներսէս ծանեաւ զԼեւոն, որպէս էրն, վեհագոյն քան զհասարակ չափ իշխանաց ազգին՝ մերձ և հեռի ժամանակաց. և թէպէտ ազատ և անահ 'ի նմանէ, և սրբազան կարգաւն, և տէրութեամբ Լամբրունի և համբաւովն, այլ ոչ յաչաղէր արժանաւորին զարժանն մատուցանել շուք և մեծարանս, առատ և ջերմ սրտիւ. և յառաջ իսկ քան զժամանակս դիպացս այսոցիկ, 'ի յիշատակարանս գրոց իւրոց պանծանօք իմն կոչէ միշտ զնա՝ իշխողս մեր, կամ « Պարոն մեր Լեւոն, որ 'ի սոյն » ժամանակս (1190) էր իշխող Կիլիկիոյ և Սաւրիոյ և » լերանց սոցին ». և 'ի թղթիս յայսմիկ (գրելոյ յամի 1194) մինչ չև էր թերևս Լեւոնի ծանուցեալ թագաւոր յայլոց, այնպէս կոչէ զնա. « Դու թագաւոր մեր », և մաղթէ հաւասարել զաթոռ նորա Կոստանդեանց և Թէոդոսեանց. նոյնպէս և յետ երկեմենի (1196), զի ընդարձակեաց զտէրութիւն Հայոց՝ « Թագաւորի Լեւոնի ձեռն, որ 'ի » Կիլիկեցւոց և Ասորւոց գաւառացն տիրէ... 'ի փառս » Քրիստոսի և 'ի զօրութիւն քրիստոնէից ». և պերճագոյն ևս 'ի հուսկ ամի կենացն, իբրու կտակ իմն ամենարժեայ թողլով նմա զբանքս. « Թագաւոր Հայոց Լեւոն, որ » յ' Ռուբինեանց, բարեպաշտ և յաղթող Աստուծով. ո» րոյ հռչակ արութեանն շարժեաց զմեծ ինքնակալն հին » Հռոմայ՝ զՀենրի, և Նոր Հռոմայ՝ զԱլեքս, որք պսակե» ցին զսա քարամբք պատուականաւ. զսա՝ Քրիստոս Ա» տուած մեր շնորհեաց մեզ երկայնութեամբ աւուրց և » անվանելի յաղթութեամբ. և 'ի փոխիլն աստի՝ սրբոց » թագաւորացն արասցէ պսակակից և խորանակից, 'ի » լուսեղէն խորանս »:

Զօրութեամբ և զգօնութեամբ՝ Լեւոն ոչ միայն 'ի վերայ բնիկ և տոհմային եկեղեցւոյն և եկեղեցականաց թևարկու լինէր, այլ և այլոց արևելեայց՝ 'ի կարևոր պէտս նոցին. որպէս երբեմն Ասորւոց ընտրեալ իւրեանց պատրիարք՝ ոչ համօրէն հաւանութեամբ՝ զՄիքայէլ Կըրսեր, ընտրեցին և այլ աւագ եպիսկոպոսունք՝ զգիտնականն Յովհաննէս-Յեսու՝ Կարճիկ մականուանեալ, յամի 1208. որ առ ապահովութեան եկն 'ի Կիլիկիա և եկաց 'ի Պաքսիմատի վանս, տարևոր ժամանակ. մինչև միաբանք մեծի վանացն Գաւիկաթայ՝ որ 'ի Սիս, աղաչեցին զԼեւոն, և ետ սա գիր ընծայութեան առ Միւէզզէտտին[3] սուլտան Մելիտինեայ, ընդ որոյ իշխանութեամբ էր աթոռ պատրիարքացն Ասորւոց, և հաստատեալ յիշխանութեանն՝ գնաց անդր Յեսու. և դարձեալ եկեալ եկաց առ ժամանակ մի ևս 'ի Գաւիկաթի վանսն, զոր Լեւոնի շնորհեալ էր նմա. ուր և յետ ժամանակաց առ Հեթմով՝ տեսաք (յէջ 221) կացեալ այլ պատրիարքունս և մետրապոլիտս Ասորիս և յապահովեալս անդ:

1 « Եկաք ('ի ժողովն), և զոր ինչ արարիք յայն ժողովն՝ համաձայնեցաք... (իսկ հակառակողքն) ոչ քննեցին և ոչ հաւատացին » մեր արդար իրաւամբք զմանուկն նահանջելոյ, և ոչ չարակնելոյ » իշխանութեանն, որում առընթեր էաք և տեղեակ... անտես ա» րարին զաստուածահաստատ իշխողիդ գիր, և զսուրբ ժողովս ե» պիսկոպոսացն որ ընդ քեզ, և զարժանաւոր եպիսկոպոսին հրեշ» տակութիւնն »: — Ո՞ արդեօք էր եպիսկոպոսն այն արժանաւոր:

2 Գրիչ վարուց Սրբոյն յամի 1190, անդստին յառաջին ամաց ծանօթութեան Լեւոնի ընդ Ներսիսի, ասէ. « Ի սոյն տէրունա» կանս՝ առ իւր տանէր զհայրս մեր, և առ 'ի սմանէ վարդապետա» կան խրատով և սրբոյ պատարագին նուիրագործութեամբ՝ մխի» թարէր, հանդերձ բազմութեամբ ժողովոյն »:

3 Ասեմանի (Մատենադարան Արևել. Բ. 231) առ Իզզէտտին սուլտան Կեսարիոյ ասէ գրեալ Լեւոնի. թերևս յետ պաշարման քաղաքին և հաշտութեանն ընդ սուլտանին: — Նոյն՝ աւանդէ այլուր, ըստ հին գրչաց Ասորւոց, վասն վանացն Գաւիկաթայ (զոր սակաւ ինչ այլայլութեամբ յիշեցաք 'ի տեղագրութեան Սսոյ, յէջ 221), եթէ շինեալ իցէ անդստին 'ի Զ դարու, յԱբուդեմեայ մեծագահ եպիսկոպոսէ Ասորւոց՝ ձեռնադրելոյ 'ի մերոյս սակաւածանօթ Քրիստափորէ կաթողիկոսէ՝ կացելոյ յետ Գիւտի:

# ԴՐՈՒԱԳ Դ.

Ա. Թագաւորութիւն Լեւոնի, խնդրելով վերստին թագ 'ի կայսերէ Ալամանաց. — Բ. Թագընկալութիւն յինքնակալէն Յունաց, եւ խնդիր միաբանութեան ընդ եկեղեցւոյ նոցին. — Գ. Միաբանութիւն ընդ Եկեղեցւոյն Հռովմայ. — Դ. Մեծահանդէս թագաւոր-օծութիւն Լեւոնի, եւ կարգ օրհնութեանն. — Ե. Հանդէս Ջօրհնեաց յամի 1212:

Ա. Յետին բանք Սրբոյ Լամբրոնեցւոյն՝ ժաման արարին զմեզ 'ի թագաւորութիւն Լեւոնի. և հարկ առնեն քննել աստանօր զերբն և զորպէսն, յետ տեսանելոյ ցայս վայր՝ փոքր 'ի շատէ, զհնարս և զարդիւնս նորին առ գերագոյն պատիւն և փառս, բազում քաջութեամբքն, աշխարհակալութեամբք, պէսպէս քաղաքական հրահանգօք և առանին շինութեամբք: Ժամանակ յղութեան խորհրդոյ կամ ըղձից թագաւորութեան 'ի միտս Լեւոնի՝ նմա միայնոյ է գիտելի, իսկ յայտնութիւն՝ որպէս վերագոյնդ նշանակեցաք, երեւի 'ի շարժման արեւմտեայց գալոյ յ'Գ խաչակրութիւն. առ որոց գլխաւորն՝ Փրետրիկ կայսրն Ալամանաց, որ և ինքնակալ հնոյն Հռովմայ զինքն համարէր, կանխեցին 'ի Լեւոնէ թուղթք, դեսպանութիւնք, խոստմունք և արգաւիր մեծարանք. և ընկալաւ առ 'ի նմանէ առհաւատչեայ ըղձացելումն՝ ոսկէկնիք վաւերական խոստագիր: Տեսաք, զի և յետ մահուան կայսերն՝ 'ի գալ որդւոյ նորին հաճանուան և առաջնորդի բանակին 'ի Տարսոն, խորհեցան իշխանքն և եպիսկոպոսունքն, և ոչ համարեցան պատշաճ կամ ոչ բաւական զինքեանս՝ 'ի թագաւորեցուցանել զնա, մինչ չև էր հրատարակեալ յաջորդ մեծի կայսերն վախճանելոյ, և ոչ քաջ 'ի վերայ հասեալ նոցա խորհրդոց Լեւոնի, և հետեւանաց նորոյ գործոյն կամ ազդեցութեանն 'ի վերայ իշխանաց արեւմտեայց՝ յայս կոյս ծովու եղելոց, այս ինքն յԱսորիս. միանգամայն զի և չէին նոցա բացայայտք՝ կրօնք և սովորութիւնք Հայոցս, և չափ զօրութեան Լեւոնի և հաստատութեանն. դարձեալ զի և ահն Սալահէտտինի տակաւին 'ի վերայ կայր, և հոգ պատերազմի և պաշարման Պտղոմայիդայ, այլ և սրածութեան և նուազութեան գերմանական բանակին, և անագանումն գալստեան այլոց խաչակիր դաշնակցաց և զօրաց, հանդերձ այլովքն: Եւ այսպէս առ ժամն խափանէր թագադրութեանն գործ., այլ ոչ և խորհուրդ. և ակնկալուն երկայնամիտ՝ առաւել ընտրէր յապաղել՝ քան վարկպարազի իմն չքով կապել թագ. որով ոչ այնքան պճնել զգլուխն կամէր, որքան բարձրացուցանել զայն յանուն ազգապետի Հայոց՝ 'ի մէջ ազգաց և պետութեանց մերձաւորաց և հեռաւորաց. այն զի 'ի հռչակել խնդրոյ իւրոյ և խոստման կայսերն Հռովմայ՝ արդէն իրաւամբք և բարոյապէս թագաւորեալ էր. չեն ինչ ապա զարմանք՝ Լամբրոնեցւոյն անդստին յամի 1194 թագաւոր կոչել զնա և ճանաչել: — Այլ զի արեւմտեայք զբաղեալ էին 'ի գործս իւրեանց՝ նաև յետ պայմանաց հաշտութեան Հռիկկարդի ընդ Սալահէտտինի, և յետ մահուան սորա եւս, հարկ լինէր Լեւոնի թղթով և դեսպանօք, և անձամբ իսկ տեսութեամբ մերձ հանդիպելոց աւագ իշխանաց, յիշեցուցանել զխոստումն մեծի կայսերն, և զիւր՝ ոչ եւս խնդիր՝ այլ զիրաւունս: Մարթ էր և յայլմէ իսկ թագաւորէ ընդունել զթագն, խոստանալով նմա զաւատականն վարկպարազի մեծարանս, այլ նորա իղձ էր հզօր և մեծամեծս ոմանս ունել իւր թիկունս՝ օգնականութեամբ և պաշտպանութեամբ երկրին և պատուոյն. և յերկոսին գերածայրեալ գագաթունս՝ կառուցեալ էր զակնն, 'ի նոցանէ ընդունել մեծաւ հռչակաւ՝ և ոչ յայլմէ ումեքէ, այսինքն 'ի հռոմէականն կայսերէ և 'ի հռովմէական Քահանայապետէ:

Ի գալն 'ի Սիսուան Հենրեայ դքսի Շամբանեայ՝ ընծայելոյ 'ի թագաւորութիւն Երուսաղեմի, որ 'ի ժամուն զուգավիճակ իմն էր Լեւոնի, և 'ի յաջողել միջնորդութեան սորա ընդ Լեւոն և ընդ Բրինձն Անտիոքայ, ըստ որում պատմեցաք, հաւանութեան է թէ յանձն արար նմա Լեւոն՝ իբրև մտերմի և երախտաւորի, ազդառնել որոց արժանն է՝ զիւր խնդիր. հարկաւորապէս և սա խոստացաւ՝ որչափ ինչ բաւէրն առնել և փութացուցանել. այլ ոչ եթէ, (որպէս գրէ հին պատմիչ ոմն արեւմտեայց[1]), սա ինքն ըստ խնդրոյ Լեւոնի թագ կապեաց նմա, իբրու զի տէր էր ընդարձակ երկրի, և զԲրինձն Անտիոքայ ընդ ձեռամբ կամ չքաղիր իւր ունէր: Գուցէ չփոթէ պատմիչդ զդուքս Հենրի՝ ընդ հաճանուն կայսերն՝ որդւոյ մեծին Փրետրիկի, յորմէ արդարև յետ սակաւուց 'ի ձեռն հրեշտակաց իւրոց և թղթոց՝ խնդրեաց Լեւոն կատարել զխոստումն հայրենի. նոյնպէս 'ի ձեռն դեսպանաց աղերսեալ նախ և առ Քահանայապետն Հռովմայ (Կելեստին Գ, զորմէ յետոյ լիցին բանք):

1 Շարայար. Գուլ. Տիւրացւոյ. Dist li Sires d'Ermenie au conte Henri: Sire, j'ai assez terre, cités et chastiaus et granz rentes, por estre roi; si est le prince d'Antioche mes hons. Je vos pris que vous me corones. Le Cuens le corona volontiers. Ainsi ot roi en Ermenie.

Պատգամաւորութիւն դեսպանացս՝ հաւանօրէն կատարեցաւ յամի 1196, 'ի Մեդիոլան[1], ուր գտանէր կայսրն, 'ի տօնի Պենտակոստէին. Լեւոն ընծայէր զանձն կամ զերկիր իւր 'ի սպաս կայսեր (ըստ աւատական օրինաց). ընդ որ մեծապէս հաճեալ կայսերն, որ և ագահօրէն կողոպտէր զընդ ձեռամբ անկեալսն, և պէտս օգնականութեան ունէր վասն յապահովելոյ զտէրութիւն Սիկիլիոյ, խոստացաւ փաղփաղակի 'ի ձեռն Խաչակրաց՝ որք հանդերձէին երթալ 'ի Պաղեստին, պսակել զԼեւոն 'ի թագաւոր Հայոց։ Այսպէս ծանուցանեն աներկբայ ժամանակակից տարեգիրք Գերմանացւոց և այլք. այլ ցանկալի էր 'ի յայտ գալ 'ի դիւանաց ուստեք՝ հայցողական թղթոց Լեւոնի, և անուանց դեսպանացն, որք թուին իշխանազունք ոմանք լինել օտարազգիք, այսինքն Փռանկք և տեարք վիճակաց. քանզի խնդրեցին 'ի կայսերէ և ընկալան 'ի պարգեւի մասին՝ անդր քան զսահմանս Կիլիկիոյ և Անտիոքայ՝ յաւելուլ ինքեանց զանծանօթ ինչ տեղիս յերկրին Ասորւոց, և յանուանէ՝ զկոչեցեալն Աշտարակ Կապարեայ[2], որ էր մերձ 'ի Թլպաշար, և ընդ սմին նուաճեալ երբեմն (1151) 'ի Նուրէտտինէ, և նովին նշանակութեամբ կոչէր յԱրաբաց՝ Պուրճ-էր-Ռասաս։

Կայսրն՝ արդարեւ 'ի մտի ունէր՝ առ 'ի սրբել զկեղտ անուանն վասն անիրաւ և կաշառակուրծ բանտարգելութեան Առիւծասիրտն Հռիկկարդայ թագաւորի Անգղիոյ, և վասն անգթութեանցն 'ի պարտեալսն և 'ի գերեալս, երթալ յաղթութիւն Սրբոյ երկրին, ուստի և ստէպ հրաւէրք հասանէին նմա գալ, և ըստ կտակի հօր իւրոյ (Փրետրիկայ) բառնալ զմարմին նորա 'ի Տիւրոսէ, և տանել թաղել յԵրուսաղէմ. այլ խափանեալ յիշխանացն կամ յիւրոց ներքին կամաց, առաքեաց գունդս գունդս Խաչակրաց, (1196-7), որք զառաջինն յաղթահարեալ 'ի Մէլէք-Ատէլայ եղբօրէ Սալահէտտինի, ապա յաջողեցան հարկանել զնա 'ի դաշտի՝ ընդ մէջ Տիւրոսի և Սիդոնի. յետ որոյ եկին և այլ գունդք 'ի Մեսսինեայ Սիկիլիոյ նաւելք։ Ընդ սոսա առաքէր Ենրիկոս զքարտուղար իւր Կոնրադ եպիսկոպոս[3], և 'ի ձեռն նորա թագս ոսկեղէնս, պսակել զԼեւոն 'ի թագաւոր Հայոց, և զԱմաւրի՝ 'ի թագաւոր Կիպրոսի. քանզի և սա հանգոյն մերոյս առաքեալ էր դեսպան (զՌենիէ տէր Ճիպլէի որ է Գաբաղ), խնդրել թագ և ընծայել մեծարանս։ — Ցելս կոյս ամսեան սեպտեմբերի (1197) եհաս քարտուղարն՝ մասամբ նաւատորմղին 'ի Կիպրոս, և եկեալ 'ի Նիկոսիա՝ պսակեաց զԱմաւրի թագիւ, գաւազանաւ և սուսերբ, ըստ օրինի հրահանգացն, և ընկալաւ 'ի դէմս կայսեր՝ զմեծարանսն։ Արժան էր նմա անցանել անտուստ 'ի Սիսուան և կատարել զմիւս ևս թագադրութիւնն. այլ թուէր իմն տատանել բաղդին Հայոց, և վրիպել զայս ևս նուագ, թէ և ոչ ընդ երկար։ Քարտուղարն՝ որ առաջնորդ կարգեալ էր 'ի կայսերէ և 'ի Քահանայապետէն (Կեղեստին. Գ.) համօրէն Գ Խաչակրութեան, (որոյ նպատակ էր առումն Երուսաղեմի, որպէս և Փրետրիկեայն), քանզի 'ի վերջ աշնայնի հասեալ էր եղանակն, փութայր ժամանել 'ի գործն կարեւոր, և թողլով առ յապա զթագադրութիւն Լեւոնի, նաւեալ գնայր 'ի Պտղոմայիս առ Խաչակիրսն։ Այսմ իրազեկ լեալ Լեւոնի, առաքեաց անդր հրեշտակս, առաջնորդ կարգեալ զՅովհաննէս՝ ճարտար արքեպիսկոպոսն Սսոյ, ըմբռնողն Գրիգորի Քարավիժի 'ի Հռոմկլայ, ուր յետոյ և ամբարձաւ 'ի գահ կաթողիկոսական, և երբեմն դիմադարձ իսկ եղեւ Լեւոնի, որպէս տեսցի յապայդ. և հրաւիրեցին յարքունիս Հայոց զառաքեալսն 'ի կայսերէ, մինչ նոքա դեռ ևս զբաղեալք էին 'ի յարդարել զգործ պատերազմին, և ոչ կարէին այլ իմիք միտ դնել։ Սակայն մինչ չեւ խմբեալ և միաբանեալ անդր զընդդիմ գնդից՝ մերձեցան աւուրք ձմերայինք, և ոչ համարեցան պատշաճ դիմել 'ի Քաղաքն սուրբ. այլ խորհեցան, առ 'ի չտալոյ պարապ այլազգեաց, կորզել 'ի նոցանէ զԹորոն բերդ ամուր՝ զկառուցեալն 'ի կատար լեռնալրի. և մինչ դեգերէինն յայն գործ պաշարման, անկաւ 'ի նոսա երկպառակութիւն, այլ և խէթ մատնութեան Տաճարական ասպետաց։ Վասն որոյ նախ ինքն քարտուղարն Կոնրադ՝ ժողովեալ զամբարս բանակին՝ թիկունս դարձոյց, երթալ անկանել 'ի մի յերկոցուն ամուր քաղաքաց՝ զոր ունէին քրիստոնեայքն, 'ի Պտղոմայիս կամ 'ի Յոպպէ, յորս անկան խուճապաւ և այլք. և զի հասեալ էր առ նոսա գոյժ մահուան Ենրիկոսի Զ կայսեր († 28 սեպտ. 1197), Ալամանք հանդերձէին դառնալ յետս յերկիր իւրեանց, ապախտ առնելով զաղաչանս այլոց. և թէպէտ ոչ առ ժամայն մեկնեցան, այլ իբրեւ առ անփութութեան, հակառակութեան և չուայտութեան զօրավարաց և զօրականին՝ մատնեցաւ և Յոպպէ 'ի ձեռս այլազգեաց (11 Նոյեմ. 1198), մեծաւ կոտորածիւ քրիստոնէից, փութացան այնուհետեւ Մնացորդք նոյին դառնալ յետս, ընդ որս և առաջնորդ նոցին քարտուղարն Կոնրադ. յանձն առնելով զգործ թագադրութեան Լեւոնի, մինչ 'ի Պերութ էր, յիւր համանունն Կոնրադ Վիդդէլսպախ, արքեպիսկոպոս Մոգունտիոյ և ծիրանաւոր կարդինալ Ս. Սաբինայ, այլ և նախապատիւ 'ի կարդինալս։

Բ. Մինչդեռ դանդաղէին արեւմտեայքդ 'ի կանգնել զթագաւորութիւն Հայոց, համբաւն տարածանէր յընդհանուրս. և մեծամեծ իշխողք աշխարհաց՝ որք երբեմն ծառայս և ապստամբս համարէին զՀայս և զՊարոն նոցին, սկսան եւեւս զիրերօք առնել՝ 'ի պսակել զնա թագիւ. յայտ է թէ ոչ այնքան 'ի պատիւ նմին, որքան յոչ

1 Ի Միլան էր կայսրն և յ'12 օգոստ. զի գտանի յայնմ աւուր հրովարտակ մի նորա անդ տուեալ։ — MURATORI, *Annali* 1196։ — Ռոհտ (Rohde) ըստ Մարբակեան ժամանակագրութեան՝ աւէ յամի 1194, որ ոչ թուի հաւանական. զի յայնմ ամի թէ և եկն Ենրիկ յԻտալիա, այլ 'ի Գենուա և 'ի Պիզա՝ հոգայր շտապաւ խմբել տորմիղ նաւաց և փութալ նուաճել զՍիկիլիա։ — Շարայարող Պատմագրութեան Տիւրացւոյն, կամ Հերակլէ (ԻԶ. 27), զտեսութիւն դեսպանացն ընդ կայսեր՝ աւէ յերկրին Բոյլաց (Puglia) հարաւային Իտալիոյ եղեալ. Quant Livons vit que il estoit seignor en chief, et que il ne tenoit de nului riens, si envoia sez messages a l'empereor Henri en Puille, ou il estoit: et li manda offrant son homage, et que il voloit de lui tenir la terre d'Ermenie: et li requist que il li envoiast la coron et le feist rei. Li empereres recut le mandement licement, et recut l'omage, et otroia que il le coronereit, quant il passerait la mer; etc.

2 Ipsi quoque legati petebant, se inbeneficiari ab Imperatore beneficiis raris et prius inauditis sitis in locis Syrie, qui vocantur, *Ad Plumbeam Turrim*. Quod et factus est. — ANNAL. MARBACH. — *Rohde*, 40.

3 Կոնրադ՝ նախ եպիսկոպոս էր Լիւպէքայ, ապա Հիլտէսհայմ, յետոյ զրաւեաց զաթոռ Վիւրցպուրկի. վասն որոյ կոչեցեալ 'ի Հռովմ՝ եգիտ թողութիւն և հաստատեցաւ 'ի նոյն. † յամի 1202։

*անպատուութիւն ինքեանց, իբրու անտեսից և յաչաղկոտաց արդեանց և զօրութեան այնպիսւոյ մերձաւորի, որ անփոյթ արարեալ զինքեանս՝ 'ի հեռաւորաց խնդրիցէ զարժանաւորն ինքեան պսակ[1]։ Վասն որոյ փութացաւ կայսրն Բիւզանդիոյ Աղեքս Գ՝ կանխել առաքել հանդերձ այլովք մեծագին ընծայիւք, «և Թագ գեղեցիկ ոսկւով և » ակամբք պատուականօք ընդելուզեալ[2]». զի մի յառաջադէմ քան զինքն գտանիցին արեւմտեայքն. և եթէ հնար է՝ մի ևս Նոցա, այլ ինքեան իբրև մերձաւորի՝ մատուսցի լճութիւն Թագաւորին Հայոց, որպէս երբեմն Նախորդաց Նորին Թորոսեանց։ — Լուեալ և մեծի ամիրապետին Մսլիմաց զհամբաւն, իբրև արեւելեան իշխան՝ ինքեան իսկ վայելուչ վարկանէր պատուել զԼեւոն, և առաքեաց ընծայս ծանրագինս արքայավայելս[3]։ — Քանի́ մեծ փոփոխութիւն բաղդի 'ի սակաւ ամս, և խտիր ընդ սպառնալիս Սալահէտտինի (1193) և ընդ ընծայատրութիւն Խալիֆային (1197–8), որում պատկառ կայր և ինքն սուլտանն գոռ։ Աւելորդ է ասել՝ եթէ ըստ պատշաճի և Լեւոն առնէր պատասխանիս և փոխարէնս ընծայողացն։*

*Բայց մեծի ճարտարութեան պէտք էին յիրաւախոհ լինել ընդ կայսեր Բիւզանդիոյ. քանզի Ցոյնն խորագէտ՝ ոչ միայն զինքնագլուխ ազատանալն Լեւոնի նկատէր, այլ և զիւրոյ ինքնակալութեան տկարութիւն և զկասկած հարստահարութեան 'ի Լատինաց, և փափագէր առմենայն ջանիւ յինքն յանկուցանել զՀայս. և առ յաջողութիւն իրացն՝ բառնալ զկրճիմն մեծ՝ որ 'ի միջի իւրեանց, այն է զխնդիրս հաւատոյ և ծիսից, և կատարել զմիաբանութիւնն՝ զոր միանգամ և երկիցս փորձեցին նախորդք իւր և հայրապետքն Հայոց, Սուրբն Ներսէս Շնորհալի և Գրիգոր Տղայ, և ոչ ել 'ի գլուխ. արդ պատեհ առեալ զԹագին ընծայատրութիւն, խոստանայր դիւրել զդժուարինսն, և խնդրէր առաքել նուիրակս ուշիմս, զի խօսեսցին և հաւանեալ կնքեսցի դաշն դաւանութեանն։ Որպէս մերժել զընծայեալ Թագն՝ հակառակ էր ամենայն հրահանգաց և զգօնութեան, նոյն և ապախտ առնել զառաջարկութեամբ կայսերն. իսկ տեղի տալ և անհակառակ ընդունել՝ յանհնարիցն, քանզի համօրէն ազգային և եկեղեցական էր խնդիր։ Ապա խորագէտն Լեւոն խորհուրդ արարեալ և քննեալ զգլուխս առաջարկութեանցն Ցունաց, որ սուղ ինչ պակաս նոյնք էին որ յառաջին նուագսն, կարգեաց և ինքն առաջարկս փոխադարձօրէն այնպիսիս, որ ընդ կրօնական կերպարանաւ ունէին և քաղաքական զօրութիւն. և առ այսպիսի գործառնութիւն մեծ և զգոյշ՝ անմարթ էր գտանել զոք պատշաճագոյն քան զամենապատշաճ Լամբրունեցին Ներսէս, մինչ դեռ ևս փայլէր նա և յաւելոյր 'ի զօրութեան ամենայն շնորհացն։ Ապա առաքեցաւ սա (1197) 'ի Կ. Պօլիս, վասն կրօնական խնդրոց. իսկ վասն քաղաքական փոխանակի հրեշտակութեան և շնորհակալութեան՝ յաղագս Թագին, տուաւ նմա ընկեր Պարոն Հալկամ, քեռի Լեւոնի, եղբայր տեառնն Պապեռօն բերդի, որ գուշակլի ոչ միայն այր չափահաս լինել՝ այլ և զգօն և հմուտ յոյն լեզուի. և 'ի սեփական պաշտօնէից Դրան Լեւոնի՝ Պարոն Պօղոս ոմն։ — Արտաքոյ է դիտման գրոցս՝ մանր քննութիւն այսր խնդրոյ. այլ համառօտեալ ասասցից, զի առեալ Ներսէսի ընդ իւր՝ զպատճէնս նախ եղեալ վիճաբանութեանց և թղթոց՝ վասն միաբանութեան երկոցուն ազգացն, նա և զկանխագոյն ևս գրելոց թղթոց պատրիարքացն Ցունաց, զԵրեմիայի, զԳերմանոսի և զՓոտայ, և զայլոց ոմանց[4], յուղի անկաւ ընդ ընկերացն. և հասեալ 'ի Թագաւորեալ քաղաքն մատուցին կայսեր և պատրիարքին՝ զԹուղթս Լեւոնի և զԳրիգորի Ապիրատայ կաթողիկոսի. յորս գրեալ էին սոքա՝ ըստ արժանւոյն՝ ընծայութիւն մեծ գովութեան զիմաստութեան և զսրբութեան նորին Լամբրունեցւոյ, իբրու միակ յետ Աստուծոյ՝ բաւականի 'ի պայքարել և 'ի քննել, 'ի հաւանել և 'ի հաւանեցուցանել յայնպիսի նուրբ խնդիրս։ Բազմօրեայ եղեն քննութիւնքն՝ ըստ մասանց վարդապետութեան հաւատոց և ծիսից ինչ, յորս տարաձայնին երկոքին ազգքս, և Ներսէս ըստ ողջամիտ իմաստութեանն առնէր պատասխանի, որոշելով զբան հաւատոյ և զայլայլութիւն ծիսի. ընդունէր զկարեւորսն, չառնոյր յանձն զոչ անհրաժեշտսն, զի գիտէր թէ ոչ եղիցի ընդունելի ազգին։ Եւ յետ կրկին զնոյն իրաց վիճելոյ յեկեղեցւոջ զկնի տօնի Պենտակոստէին, և բազում դրուատիս լսելոյ 'ի Ցունաց, իբրև ետես սա զՑոյնս յամառեալս 'ի խնդրել զփոփոխութիւն ինչ ծիսից, և ևս առաւել ընդ իշխանութեամբ պատրիարքին իւրեանց արկանել զկաթողիկոսն Հայոց, որպէս թէ գոնեա զձեռնադրութիւնն առնուլ 'ի նմանէ, խոստացաւ յանձն առնուլ և զայն՝ եթէ և նոքա հաւանեսցին հրաժարել 'ի պատրիարքութենէ Անտիոքայ՝ և Հայոց թողուլ զայն անուն և աթոռ. ընդ սմին և այլ ինչ պայմանս եդ ոչ տարադէպս, բայց եթէ գոռոզութեան և հնացեալ սովորութեան նոցին. զոր ոչ առեալ յանձն Ցունաց՝ ինքնին 'ի դերև հանէին զառաջարկութիւն իւրեանց և զՀայոց չափաւոր զիջողութիւն. ընդ որ՝ ոչ գիտեմ առաւել զցաւ իւր յայտնիցէ մերս Ներսէս՝ եթէ զգայթակղիլն ընդ նոսա. «Արարեալ, ասէ, խօսակցութիւն՝ (նախայիշեալ կրօնական » գրուածովքն), գտաք զնոսա անծանօթ 'ի սոցանէ, » Թանձրաբարբառք, և հրէական կամօք ընդ նիւթս » կապեալք. որք ոչ ախորժեն ծառայել Աստուծոյ՝ նորո» գութեամբ Հոգւոյն, այլ հնութեամբ գրոյն։ Եւ սորջացեալ 'ի հոգևոր կամս մեր՝ դարձաք յիմաստախոհ յուսոյ սոցա՝ ամօթով[5]»։ — Թուի ինձ թէ սակաւայոյս քան զՍուրբն էր խորագէտն Լեւոն՝ 'ի յաջողութենէ միա-*

[1] Շարայարող և աւարտող Պատմագրութեան Միխայէլի Ասորւոյ այնպէս խորհրդածէ վասն Լեւոնի. «Եւ անուն նորա ընդ ա» մենայն երկիր. և փութացան պսակել զնա տունն Ցունաց և տունն » Ֆռանկաց. ըստ որում առաքեցին նմա Թագ յիւրաքանչիւր կող» մանց, 'ի պարծանս իւրեանց առնելով զայն»։

[2] Կիրակոսի պատմչի են այս բանք։

[3] Լը Պօ, Պատմ. Արեւելեան Կայսերաց. Գ, Ծ։

[4] ԶԱԹանասի և զՄանեայ, ըստ ձեռագրին, յորոց առաջինն թուի ինձ պատրիարքն Աղեքսանդրիոյ յԵ-ը Ե դարու. երկրորդն՝ Մեննաս պատրիարք Կ. Պօլսի յամս 536–52. որոց թուղթք անծանօթք են մեզ, որպէս և Երեմիային՝ որ յամս 984–1012։

[5] Արժան համարիմ և զառացեալսն զՆերսիսէ բանս կարգել. որ թէ և յազգայնոյ աւանդեալ՝ այլ հաւաստ ճշմարտութեան. յաւարտ վիճաբանութեանցն՝ ասէ. «Եկն ոմն իմաստասէր կրօնաւոր » առ Ս. Ներսէս, և ասէ, թէ Աւանձինն առեր գովութիւն 'ի » մետրապօլտացն և 'ի կղերիկոսացն և յիշխանացն և առ հասարակ

բանութեանն ընդ Յոյնս, և ոչ այնքան փափագող՝ որքան ընդ Լատինացիսն, ընդ որոց՝ շահ մեծ օգտի էր նմա՝ հաւասարել, և բառնալ զխէթ և զկրճիմն այլափառութեան կարծեաց՝ միանգամայն և որդեգրել ընդ անձինն և զնորապսակ թագաւորութիւն ազգին՝ ընդհանրական Քահանայապետին Հռովմայ, զորոյ տեսանէր յայնժամ կրկնազօր հեղինակութիւն 'ի վերայ ամենայն միակրօնից քրիստոնէից. և թէ որպէս օրհնառաք և յորդորակ կոնդակօքն և քարոզչօք՝ շարժէր զազգս և զժողովուրդս և զարեւմուտս համօրէն, յօգնախուռն բանակօք խաղալ կռուել զաշխարհս այլալեզու ազանց, և ընդ երկայնաձիգ ճանապարհս հերձանելով զկոհակս լերանց և զծովուց՝ դիմել յարեւելս, զինեալք խաչիւ և սուսերաւ, յազատութիւն Քրիստոսի տնօրինական և սուրբ տեղեացն։

Գ. Կարեւոր է մեզ առանձին նկատել զայս մեծ խորհուրդ և գործ Լեւոնի, զմիաբանութեանն ընդ արեւմտեան եկեղեցւոյ, զի և անանջատ է 'ի խնդրոյ թագախնդրութեան նորին։ — Ոչ նոր ինչ և առաջին նուագ էր այս՝ ծանօթութեան և ընտելութեան Հայոցս ընդ Լատինաց, այլ անդստին 'ի դարէ հետէ, և յառաջ իսկ քան զյառնել Խաչակրաց, սկզբնաւորեալ՝ շնորհօք նախահաւու Պահլաւիկ կաթողիկոսաց, մեծի Վկայասիրին ասեմ Գրիգորի. որում՝ յուղեւորութիւնս իւր յԵրուսաղէմ և 'ի վանորայս Եգիպտոսի՝ հանդիպեալ ուխտաւորաց արեւմտեայց՝ սքանչանային ընդ իմաստութիւնն և ընդ սրբական վարսն, և ըղձային հաղորդակից լինել եկեղեցւոյն Հայոց, համբաւելոյն հարիւրաւոր եպիսկոպոսօք ընդ միով կաթողիկոսական գլխով, որում պապական իմն պատիւ ընծայիւր յազգէն։ Թէ որպիսի բանագնացութիւնք վասն իրացս եղեն, ոչ է տակաւին քաջ ծանուցեալ, այլ վկայ աներկբայ ստուգութեան են թուղթք Գրիգորի Է մեծի Քահանայապետի, մին առ Ընրիկոս Գ կայսր յամի 1074, յորում յիշէ զխնդիր միաբանութեան Հայոց. միւս՝ առ նոյն ինքն կաթողիկոսն[1] Վկայասէր՝ յամի 1080. նուիրակութիւնն 'ի նմանէ Յոհաննու քահանայի, և ինքեան իսկ կաթողիկոսին Վկայասիրի երթալն 'ի Հռովմ։ Յետ այսորիկ առ փոքր Վկայասիրաւն և Գ Եւգենիոս Քահանայապետիւ, մերձ 'ի կէս ԺԲ դարու, եղեն նուիրակութիւնք յերկոցուն աթոռոցն, հարցուածք և հաւանութիւնք, որպէս յիշեն ժամանակակիցք արեւմտեայք[2]. բայց պատճէնք գրութեանցն ոչ հասին առ մեզ։ Առաջին յայսպիսեաց՝ մնայ մեզ յաւուրց մերոյս Լեւոնի, սակաւ ամօք յառաջ քան զպսակադրելն (1184), թուղթ մի Լուկիոսի Գ Հայրապետի առ Գրիգոր Դ (Տղայ) կաթողիկոս, գրեալ 'ի Վերոնայ քաղաքէ, հանդերձ ընծայիւք, որպէս ծանուցանէ և թարգմանէ զայն մեծ երախտաւորն մեր Ներսէս Լամբրոնեցի. «Ի թուին
» Հայոց ՈԼԴ (1185) եկն Գրիգոր եպիսկոպոս (Փիլիպ-
» պուպօլսոյ) 'ի Հայրապետէն Հռովմայ Լուկիոյ՝ առ կա-
» թողիկոս մեր Գրիգորիոս, որ էր 'ի նմանէ առաքեալ,
» և եբեր զՊատասխանի Նամակի Տեառնս մերոյ, և զԳիրս
» կարգաց եկեղեցւոյ՝ Հռովմայեցի գրով. և եգիտ զՏէր
» մեր 'ի քաղաքն Տարսոն, յամսեանն հոկտեմբերի։ Եւ
» ընկալեալ կաթողիկոսին սրբոյ զՊալիւմն և զԽոյրն 'ի
» լրումն պատուոյ իւրոյ՝[3] գոհացաւ զԱստուծոյ։ Եւ ետ
» զնամակ Քահանայապետին և զԳիրս կարգաց եկեղեցւոյ՝
» յիմ նուաստութիւնս, թարգմանել. զոր յեղաշրջեցի 'ի
» հայ բարբառ, միայն երկիւրեալ զբանն քերթողական
» արուեստիւ, առանց յաւելուածոյ և թերութեան»։
Ընդ Կարգաց գրոցս յիշի առանձինն 'ի խորագրի թղթոցն՝ և Ձեռնադրութեանն կարգ ըստ Լատինաց, որում համաձայն գտանին բազում մասամբ, և որով արդ եկեղեցիս Հայոց վարի՝ Կանոնք ձեռնադրութեան. յայտ ուրեմն զի 'ի Լամբրոնեցւոյն թարգմանեալք են և յերիւրեալք[4]։

Յետ չորից ամաց, այն է երրորդ ամ պսակադրութեան Լեւոնի (1189), Քահանայապետն Կղեմէս Գ գրեաց ('ի 28 մայիսի) առ սա և առ նոյն կաթողիկոս Գրիգոր, և առաքեաց «ընդ զօրսն և ընդ թագաւորս՝ որք եկին յայսկոյս
» ծովու, փրկել զքաղաքն Երուսաղէմ, յետ երից ամաց
» գերութեանն». որպէս ծանուցանէ նոյն Ներսէս 'ի խորագրին. իսկ վերնագիր թղթոյն առ Լեւոն (որ ամենևին համաբան է ընդ գրեցելոյն առ կաթողիկոսն), այսպիսի է. «Կղեմէս եպիսկոպոս ծառայ ծառայից Աստու-

» յամենայն ժողովրդոցն. զի որ 'ի մարտ ելանէ՝ թէ և ինքն գիտէ
» զիւր ըմբիշն թափ տալն, բայց հայեցողն առաւել եւս տեսանէ.
» այսպէս և մեք զքո յաղթութիւնդ՝ հակառակամարտին։ Նոյն-
» պէս և իշխանքն զայրին և աւէին զարմացմամբ, թէ Մին մարդ
» զայսքան մեծ ժողովս յաղին կացոյց։ Եւ 'ի հարցանելն և 'ի Սրբոյն
» Ներսէսի պատասխանելն՝ ամենեքեան ափ 'ի բերան եղեն»։

1 Թէպէտ և թուղթ Պապին վերագրեալ է առ արքեպիսկոպոս Սիւնեաց, այլ բանքն ցուցանեն առ վեհագոյն ոմն գրեալ. և թերևս տեղին ոչ Սիւնեաց էր՝ այլ Ծամնդաւ, ուր նստէր երբեմն մեծ Վկայասէրն Գրիգորիոս։

2 Ոթոն Ֆրիզինկէնի արքեպիսկոպոս ժամանակակից († 1158), պատմէ զիրացս 'ի ժամանակագրութեան իւրում. զոր յիշեալ է մեր այլուր. (Շնորհալի և Պարագայ իւր, էջ 171-4, և յետոյ)։

3 Վարդան Պատմիչ եւս յիշելով զայսոսիկ՝ գրէ զընծայս Պապին, զնորա «Վեղար և զՊոռն և զԿօշիկն. զի զայն զգեցեալ պատարա-
» գեսցէ, Մատանեաւ հանդերձ»։ Այլ յոյժ անյարմար յարէ 'ի նոյնս, եթէ «Գրեաց գիր հրամանաւ սուրբ Առաքելոցն՝ 'ի նոցա երեսաց,
» եթէ Հայոց պատրիարքն՝ յայնկոյս ծովու իշխանութիւն կալցի 'ի
» վերայ Հայոց և Յունաց և ամենայն ազգաց, որպէս մեք յայսմ կող-
» մանէ, երկնաւոր և երկրաւոր բանալեօք»։ Պատրեալ անշուշտ բարեմիտ պատմչին 'ի բանից Դաշանց թղթոյ, որ թուի զայսու ժամանակաւ յօդեալ յոյժ անյարմարապէս. զորս նշաւակէ պատճէն թղթոյ Քահանայապետին Կղեմայ, թարգմանեալն 'ի Լամբրոնեցւոյն, որ տեսցի յառաջիկայդ։

4 Պատճառ կամ շարժառիթ գրութեան կաթողիկոսին Հայոց առ Քահանայապետն՝ ոչ յիշի 'ի թարգմանչէն և ոչ յայլոց։ Բայց ոչ վայրապար համարիմ նշանակել առանձնոր զանծանօթն յոլովից աւանդութիւն գրաւոր, 'ի զգաստութիւն ընթերցողաց թողեալ զչափ ընդունելութեանն։ Նշանաւոր խոհականութեամբ և սրբութեամբ կեայր յայնմ ժամանակի Ս. Կիւրեղ († 1203) ազգաւ յոյն, երրորդ աբբայ կացեալ վանաց Ս. Աստուածածնի 'ի Կարմելոս լերին. առաքեալ երբեմն 'ի Մանուէլէ կայսերէ առ Քահանայապետն՝ վասն միաւորութեան երկոցուն կայսերութեանց, և երբեմն առ սուլտանն Իկոնիոնի։ Սմա ասի յաղօթելն երբեմն 'ի լերինն՝ ազդ արարեալ Ս. Բարսղի՝ երթալ քարոզել 'ի Հայս. զոր և կատարէ Սուրբն, զամս տասն դեգերեալ 'ի զանազան կողմանս մերոյ աշխարհիս. և 'ի սորին բանից ազդեցութենէ՝ ասէ պատմիչ վարուցն, գրեալ թագաւորին Հայոց առ Պապն Լուկիոս, յամի 1181. որ առաջին ամ է քահանայապետութեան սորա, իսկ զմերոցս իշխանութիւն ունէր յայնժամ Ռուբէն եղբայրն Լեւոնի։ — ԲՈԼԼԱՆԴ. մարտ 6։ — Զքարոզութիւն Սրբոյն նշանակէ քերդող ոմն Լատին՝ տողիւքս.

Tu vero, venerande Pater...
Per Armenias urbes, Parthosque per omnes
Undique sparsisses divini semina verbi.

» ծոյ, մեր սիրեալ որդւոյ մեծապատիւ իշխանի Լեւոնի » Լեռնցւոյ, ողջոյն և առաքելական օրհնութիւն[1] »: Յիշէ Քահանայապետն յայսմ թղթի զնախայիշեալն 'ի Նախորդէն իւրմէ Լուկիոսէ, և ողբալով զաղէտս գերութեան Երուսաղեմի, յորդոր լինի Նմա ձեռն տալ Խաչակրաց եկելոց 'ի փրկութիւն քաղաքին: Զատ 'ի հաւա֊

1 Յետ խորագրին՝ զառաջին տող թղթոյն միայն գրեալ, ծանուցանէ Թարգման մեր Ն. Լամբրունեցի, եթէ՝ «Նոյն և այս թղթիս » բանք՝ անթերի և անյաւել՝ որպէս առաջնոյն որ առ կաթողիկոսն » սուրբ. զոր աւելորդ համարեցայ կրկին գրել »: Յայտ է զի 'ի բնագրին յառաջ դասեալ էր թուղթն որ առ կաթողիկոսն, թէ և նոյն էին բանքն. զոր արժան և բարեբաղդ իսկ համարիմ կարգել աստանօր, զանց զբանիւք ինչ արարեալ՝ որ յայլակրօնս ակնարկեն. և այնքան յօժարութեամբ, զի յետ թղթոյ Լուկիոսի Պապի՝ առաջին և գրեաթէ միակ է՝ որոյ գտանի հայերէն թարգմանութիւն, և յայնպիսի գրչէ թարգմանեալ. և ևս առաւել, զի կարծեմ թէ լատին բնագիրն և ոչ 'ի քահանայապետական Դիւանս մեծին Հռովմայ գըտանի արդ:

« Կլեմէս եպիսկոպոս ծառայ ծառայից Աստուծոյ, Պատուական եղբօր մեր Գրիգորի կաթողիկոսի ամենայն Հայոց, ողջոյն և առաքելական օրհնութիւն:

« Խրատն՝ զոր յԱստուծոյ արդար դատաստանէն՝ աշխարհդ արևելից 'ի ժամանակս մեր ընկալաւ, հաւատամք զի առաւել ցաւէ 'ի սրտի քում, մերձաւոր գոլով երկրին և ունկնդիր վշտին և չարչարանացն՝ զոր կրեն: Քանզի ես ողորմութեամբն Աստուծոյ 'ի հաւատ կաթողիկէ հաստատեալ, վասն այսորիկ ոչ կարես հանդուրժել, այլ արտասուօք սգաս զանարժանութիւն քրիստոնէից: Նաև ոյք են որք զանուն քրիստոնէութեան ունին և քրիստոնեայք են, և հանդուրժել կար(ից)են յայդքան անարգութիւն Սրբոյ երկրիդ, որպէս տեսանի այժմ գարշ և զազիր պղծութեամբ աղտեղեալ, և որ 'ի Նմա սրբութիւնքն որպէս զաղբ անարգ… կոխան տուեալ. հաւատացեալքն Քրիստոսի սպանեալք, և Նոցին սրովն ջնջեալք: Զոր և մեք առանց սաստիկ ցաւոց մերոց՝ ոչ կարեմք բերել:…

« Ո՜հ. ահա դառն են աւուրքս մեր, յոր սուրբ երկիրն Երուսաղեմի կորեաւ, հաւատացեալքն սպանան, սրբութիւնն կոխան եղև. և որ ասացեալն է Նախ՝ ողբք մարգարէութեանն՝ առ. մեզ լցաւ, «Աստուած, մտին հեթանոսք 'ի ժառանգութիւն քո, պղծեցին զտաճար սուրբ քո »: Արդ, այս ամենայն ձեզ յայտնի է, և առանց ստութեան գիտէք, վասն մերձաւորութեան գաւառիդ. այլ և մեք փութացեալ վաղվաղակի զայն յունկն հաւատացելոց խօսեցաք. որք պատրաստեցան սրտութեամբ, և գան յօգնականութիւն այդմ աշխարհի. անձամբ և ընչիւք և զինուք՝ դէմ եդեալ գան, համբերել չարչարանաց վասն Նորա՝ որ յայդ սուրբ երկիրդ ծնաւ, և բազում անարգանաց համբերեաց. և 'ի կատարումն՝ 'ի Նշանակ խաչտառակութեան խաչին զմեղս մեր եթող, և յանմահ մահուանէն զմեզ ազատեաց: Առ որ և յուսամք՝ թէ խրատելովն ուղղէ և դարձեալ մխիթարէ. և այսու ճանաչին իւրքն, զանարգութիւնն Քրիստոսի յինքեանս բերելով. յոր և ակն ունիմք, թէ ոչ առանց հաշտութեանն բարկացեալ (է) ժողովրդեանն. վասն զի 'ի բարկութեանն յիշէ զողորմութիւնն, և զկնի լալով երթալոյն՝ խնդութեամբ դարձուցանէ:

« Արդ որպէս եւ Աստուած տնտես և հաւատաց 'ի քեզ զոգէտ ժողովուրդդ, և զքեզ եդ ճշմարիտ լոյս՝ զի տացես լոյս այդմ աշխարհացդ, վերակացու լեր այդմ դառն և անծուկ պատահմանդ՝ և օգնական. և օր ըստ օրէ զառ 'ի քեզ հաւատացեալ ժողովուրդդ քաջալերեա և զօրացո. զի տեսեալ զքեզ յոյս փոյթ՝ ամենայն ժողովուրդք Հայաստանեայց՝ որք ընդ քեւ են, փութացեալ պատրաստեսցին գալ յօգնականութիւն սուրբ տեղեացն, որք զինուք, որք ընչիւք, որք անձամբք, 'ի Սուրբ երկրին դիմեսցեն յազատութիւն. զի զամբարտաւան…'ի պատերազմ իւրեանց յաղթահարեսցեն. և ('ի) դոցա միաբանութիւն մարտակցութեան որ առ քեզ են՝ և արեւմտական զօրք յայսմ աշխարհէ Աստուծով փութացեալ գան. որպէս զի ժառանգութիւնն Աստուծոյ ազատեսցի:…

« Արդ մեք՝ որ յաջորդ * եմք Քրիստոսի, ամենայն բարեգործաց՝ մեղաց թողութիւն տալ, գիտասցուք յԱստուծոյ տուեալ զայս պատճառս ամենայն քրիստոնէից մեղաց ապաշխարութեան. վասն որոյ և որք Նուիրեն յայս մրցումն զանձանց չարչարանս, կամ զընչից ծախս, յուսամք յողորմութիւնն Աստուծոյ և 'ի Սրբոց Առաքելոց Պետրոսի և Պաւղոսի շնորհքն, թէ 'ի պատերազմի մեռանին և թէ մնան կենդանի, և զխոստումն իւրեանց կատարեն, զի ամենայն մեղաց որոց խոստովանեալ են՝ զթողութիւն առցեն. Նոյնպէս և եթէ և 'ի ձեր սահմանաց՝ և կամ յայլ գաւառաց ընչիւք օգնականութիւն առնեն Սրբոյ երկրին, թողութիւն առնեմք, որպէս Աստուած սրտից իւրեանց ետ կամք առատութեան, և որպէս արժան է ծախք տրիցն:

« Եւ տես զայս զգուշութեամբ, Պատուական Եղբայր, որպէս Աստուած զքեզ ողորմութեամբն իւրով լուսաւորեալ է, զի անձամբ քո և ժողովրդեամբ՝ որք յաշխարհդ Արեւելից՝ 'ի քէն հոլովին, 'ի Սուրբ տեղեացն ազատութիւն յօժարեսցիս գնալ: Եւ որպէս կատարի կամք քո, և Աստուծով այս խորհուրդս յաջողի, փութացիր գրով քո մեզ յայտնել: Եւ այս յայտնի լիցի քեզ, զի թէպէտ և 'ի մերս մարմնական աչաց տեսութենէ բացակայ ես, հոգւոյ աչօք հանապազ զքեզ տեսանեմք և ողջագուրեմք սրտով և սիրով. և զխնդրուածս զոր կամիս՝ հեշտութեամբ կատարեմք »:

Պակասէ թուական թղթոյս, այլ զի 'ի խորագրին առ յերրորդում ամի գերութեանն Երուսաղեմի բերեալ 'ի Խաչակրացն, յայտ է թէ գրեալ է յամի 1189: Ընդ նմին գրեալ և բերեալ էր երկրորդ թուղթն առ նոյն կաթողիկոս, որպէս ծանուցանէ Թարգմանիչն՝ միով բանիւ, և յարէ զպատճէնն, այսպէս.

« Եւ այս (Թուղթ) ընդ առաջնոյս բերաւ.

« Կլեմէս եպիսկոպոս, ծառայ ծառայից Աստուծոյ, Գրիգորի կաթողիկոսի Հայոց, ողջոյն և առաքելական օրհնութիւն:

« Հաւատամք՝ եթէ անմոռաց ունիս 'ի մտի զԼուսիոս Պապն, որոյ յիշատակն երանութեամբ, որ Նախ էր քան

* Ու յաջորդ, այլ 'ի դէպ էր փոխանորդ գրել, ով Սիրելի և Երանելի Թարգմանիչ: Գրեցի՛ր արդեօք և դու, և ընկալա՞ր թուղթս 'ի գահից անտի Հռովմայ, « Ուր եդին զՎէմն հաւատոյ հիման սուրբ եկեղեցւոյ »: — Մեծի հաւանութեան վարկանիմ զայս:

սարէս՝ գրէ և այլ հակիրճ թուղթ առ կաթողիկոսն՝ որոյ խնդրեալ էր 'ի Քահանայապետէն իւղ օրհնեալ (միւռոն), և ասէ ոչ առաքել, քանզի կարող էր և ինքն կաթողիկոսն օրհնել։ Այսպէս գեղեցիկ խոնարհութեամբ առաքինացեալ երկոցուն հայրապետացն, մին խնդրելովն, միւսն հրաժարելով։ — Յան մի թղթոյ Քահանայապետին Իննովկենտեայ առ Լեւոն (յամի 1207) տայ գուշակել, եթէ և Նախորդք Պարոնիս Հայոց թղթակցեալ էին ընդ գահուն Հռովմայ, ուր գտանին ասէ յիշատակք նոցին [1]։

Ոչ են յայտ զի՞նչ պատասխանեցին թղթոցս Կլեմայ Գ՝ կաթողիկոսն և Լեւոն, և ոչ այլ թղթակցութիւնք. բայց միայն զի գրեաց սա 'ի ձեռն Նախայիշեալ հրեշտակացն՝ վասն խնդրոյ թագին և օրհնեգրութեան Հռոմէական եկեղեցւոյ (1196). և որպէս ասի՝ ընկալաւ նշանակ մեծի հաճութեան Քահանայապետին՝ թագ ոսկեղէն, զոր առաքեաց նա 'ի ձեռն նոյն հրեշտակաց առ կայսրն Հենրիկոս, առ որ դէմ եղեալ էր նոցա, և ընդունելի եղեն, որպէս տեսաք վերագոյնդ [2]։ Ըղձալի էր յոյժ գտանել զայս աղերս Լեւոնի և զպատասխանի Քահանայապետին (Կելեստինոսի Գ), յորոց՝ 'ի վերայ հասանէաք ստուգիւ պայմանաց կամ դաշանց եղելոց 'ի միջի իւրեանց, կամ պահանջմանց գահուն Հռովմայ և խոստմանց կաթողիկոսին, որ էր յայնժամ խոհական ծերունին Գրիգոր Ապիրատ։ Որպէս պատմիչք մեր՝ վկայեն և օտարք, զի եղեն և եդան այսպիսի պայմանք 'ի վերջին ամս ԺԲ դարու, և թէ վասն յանձնառութեանն Հայոց՝ հաճեցաւ Քահանայապետն ընդ թագաւորել Լեւոնի, և պարգևեաց նմա դրօշ. և սորա ճիգն և ջան մեծ եղև՝ հաւանեցուցանել զիւրսն յընդունելութիւն պայմանացն, քան յայլ ձեռնարկս իւր. առ որ զօրավիգն մեծ եղեն նմա՝ կանխեալ ընտելութիւնք կաթողիկոսաց և Ներսէսի Լամբրոնեցւոյ, և թղթակցութիւնքն և ընծայաբերութիւնք 'ի Հռովմ։ Կիրակոս պատմիչ մեր՝ որ իբր եօթանասուն ամաք յետոյ

գրէր, և 'ի հեռաւոր վայրի, և ըստ համբաւուց, խառնէ զստոյգ և զանստոյգ, զհաճաւոր և զանհաճ. Ներսէս Պալինեցն՝ իբր դարու միով ևս զկնի, և այլք ոմանք, հարևանցի բանիւք ցուցանեն՝ պահանջեալ Ս. Գահուն 'ի Հայոց՝ այսպիսի ինչ. Ա. զմեծամեծ տօնս տօնել հաստատուն ըստ աւուրց ամսոց, ըստ սովորութեան լատին եկեղեցւոյ. որով իմանալի է զգլխաւորսն, զԾննդեան Տեառն և որոց ընդ նմին կապակցեալ են. — Բ. ոչ լուծանել զպահս ճրագալուցի Ծննդեան և Յարութեան Տեառն՝ կթեղինօք, այլ միայն ձիթով և ձկամբ. — Գ. զկարգս ժամուց պաշտաման կատարել 'ի ներքս յեկեղեցւոջ, և ոչ արտաքոյ, « զոր 'ի վաղուց հետէ ոչ առնէին Հայք » (ասէ Կիրակոս) 'ի հինահարութեանց Իսմայելի, բայց » միայն 'ի ժամ խորհրդածութեան պատարագին ». — Դ. (ըստ ոմանց), կարգել յերկրի տէրութեան Լեւոնի ուսումն լատին լեզուի, և վարժել զմանկունս յերկոտասանամենից և 'ի վայր. — Ե. առաքել կաթողիկոսի ըստ սահմանեալ թուոյ ամաց՝ նուիրակ արգաղիր առ Քահանայապետն 'ի Հռոմ։ — Համարիմ թէ և այլ ինչ ինչ այսպիսիք խնդրեցան 'ի Հայոց, զի նշանակեալքդ միայն՝ բաց յառաջնոյն և 'ի վերջնոյ՝ (զոր ոչ յիշէ Կիրակոս), չէին այնքան ծանր թուելիք, որքան ցուցանէ պատմիչդ այսպիսի անհաւան բանիւք [3], զոր ('ի յայտնութիւն կարծեաց նորա և նմանեացն, և պատմական յիշատակի եպիսկոպոսաց ոմանց), կարգեմ աստանօր. « Լեւոնի կոչեալ զկաթողիկոսն և զեպիսկոպոսսն՝ հարցանէր, թէ » զի՞նչ պատասխանի տացէ պատգամին. և նոքա ոչ » հաւանեցան առնել զխնդիրն. և ասէ ցնոսա Լեւոն. » Դուք մի՛ ինչ հոգայք վասն այդորիկ. ես հաճեցից զմիտս » նոցա առ անգամ մի կեղծաւորութեամբ։ Եւ պատասխանի արարեալ ասէ ցեպիսկոպոսն Հռոմայ. Զոր ինչ » հրամայէ Կայսրն և Պապն մեծ՝ անյապաղ առնեմք զամենայն ։ Եւ նորա երդումն պահանջեալ 'ի նոցանէ՝ » երկոտասան եպիսկոպոսաց, և հաւանեցոյց Լեւոն զե-

զմեզ. ըստ խնդրոյ ձեր առաքեաց Գիրք՝ զկարգաւորութիւն եկեղեցւոյս Հռովմայ *. և վասն այսր՝ աւելորդ համարեցաք զՄիւռոնն՝ որ 'ի մէնջ օրհնի՝ ձեր Պատուականութեանդ առաքել. այլ յօժարութեամբ զքեզ՝ որպէս ճշմարիտ քրիստոնեայ՝ պատուեմք, զձեր խնդրուածս լսեմք »։

1 Tu enim per cæteris prædecessoribus tuis, quorum extat memoria, specialius in nostra et Ecclesiæ Romanæ devotione persistis. — Innocent. III. *Epist.* V. 44.

2 « Իբրև եռեա (Լեւոն, ասէ Կիրակոս), եթէ յաջողեցաւ նմա » տէրութիւնն առաւել քան զնախնիսն իւր, խորհեցաւ այնուհետև » ընդ իշխանսն իւր և ընդ մեծամեծս՝ թագաւորել. և առաքեաց » 'ի տիեզերահռչակ քաղաքն Հռովմայեցւոց առ ինքնակալ կայսրն » և առ Պապն, զի տացէ նմա հրաման և թագ թագաւորական. » զի ոչ կամեցաւ նա այլում հնազանդել վասն թագի՝ բայց թէ ազ» գին փռանկաց. միանգամայն և պարծանս իւր վարկաւ զԱուրբ » Առաքեալս Պետրոս և Պօղոս՝ որ կան 'ի Հռովմ քաղաքն, որպէս » թէ 'ի նոցունց առեալ զօրհնութեան պսակն։ Եւ առաքեն նմա » կայսրն և Պապն Հռովմայեցւոց՝ թագ ազնիւ՝ զառաջին թագաւորացն, և արծուէս մի պատուաւոր, այս ինքն արքեպիսկոպոս մի, » դնել զթագն 'ի գլուխ նորա, երիս իրս պահանջեալ 'ի նմանէ », և այլն։

3 Որպիսի և այս է. իբրու ասացեալ թագաւոր արքեպիսկոպոսին Լատինաց, եթէ՝ « Յորժամ զայդ առնիցէք, ոչ ինչ փոյթ առնիցէք » տրոց և ընծայիցն՝ կայսերն և Պապին, վասն թագիդ. ապա թէ » ոչ առնիցէք՝ հրաման ունիմ, ասէ, այնչափ գանձս առնուլ 'ի ձէնջ » ոսկւոյ և արծաթոյ և ականց պատուականաց »։ (!)

* Թուղթ Լուկիոսի գրեալ է յ' 3 դեկտեմբերի 1184 ամի, 'ի Վերոնայ քաղաքէ. 'ի նմին ամի երևի (յառաջին ամիսս) գրեալ մերոյս կաթողիկոսի առ նա, թերևս և այլս ևս յառաջ քան զայն, որպէս է գուշակել 'ի նախակարգեալ 4 ծանօթութենէ, և 'ի նոյն իսկ 'ի բանից Հայրապետին, յորս նշանաւոր և այսոքիկ... « Լրապէս » ուրախ եմք հոգւով և մարմնով յամենայն ժամ՝ յորս զէէջս Յէբ » լսեմք, և զղափտմաար հրեշտակս տեսանեմք, զուարճացեալ լինիմք, զի մեծանայք և բազմանայք հաւատով և խաղաղութեամբ. » որպէս լուաք զամենայն գործոց ձեր ճշմարտութիւն, պատմեալ » 'ի ճշմարիտ եղբօրէս մերմէ՝ Գրէգորէ արքեպիսկոպոսէ Փիլիպպոպոլսոյ, որ է 'ի ձէնջ առ մեզ առաքեալ. զոր պատուեցաք արժանապէս. և յաղագս ձեր բարեաւ կալոյ՝ փառս տուաք գոհութեամբ Աստուծոյ։... Ողջունեմ քեզ, եղբայր Կաթուղիկոս, Պօլիտոն, որ է առաջին ամենայն պատուոյ, և խոյր՝ զիմոյ գլխոյս՝ » առաքեցի, զգեստ պայծառութեան եկեղեցւոյ. զորս ընկալեալ քո » 'ի մէնջ՝ որպէս վայելչանաս յայսմ աշխարհի, նոյնպէս զօրացիս » պայծառանալ 'ի հանդերձեալ կեանսն »։ — Տես և զբանս Լամբրոնեցւոյն և զՎարդանայ պատմչի, յէջ 466 և 'ի ծանօթ. 3։

» պիսկոպոսն յանձն առնուլ զերդումն. և արարին » եպիսկոպոսք զբանս երդմանն։ Յորոց մի էր եպիսկոպոսն Տարսոնի Ներսէս Լամբրոնացի¹, զոր վերագոյն » յիշեցաք, և Յովսէփ՝ կողմանցն Անտիոքու առաջնորդ » վանացն՝ որ կոչի Յեսուանց, և Յովհաննէս՝ որ եղև կաթողիկոս, և Անանիա՝ որ եղև հակառակաթոռ 'ի Սեբաստ. և այլք ընդ նոսա »։ — Հարկ է թէ և Հայոց էին պայմանք և պահանջք 'ի Լատինաց, որպէս երբեմն 'ի Յունաց, յայսմ նուագի, կամ սուղ յետոյ. յորոց սակի յայտնին 'ի թղթոց նոցին՝ երկու այսոքիկ, և ոչ աննշանք. Ա. զի մի կատարեսցի ժողով եկեղեցական յայսկոյս ծովու (յարևելս՝) առանց ընթերակայութեան կաթողիկոսին Հայոց. Բ. մի ոք ունիցի աստանոր իշխանութիւն ընդ բանիւ առնել զՀայս, բաց 'ի Սրբազան Քահանայապետէն Հռովմայ։ Այսոքիկ վկայեալ են և 'ի նուիրակէ Պապին, բայց յետ ամաց թագաւորութեան Լևոնի։ Ակն ունելի է եթէ յաւուր միում յերևան գայցեն յիշատակարանք իրացս՝ և 'ի նշխարեալ թերթից դպրութեան ազգիս մերոյ։

Դ. Իսկ մեզ՝ դառնալով առ պատմութիւն, հարկ է համարել՝ թէ որպիսի ինչ և գործեցաւն՝ եղև յետ հրեշտակութեան Յովհաննու արքեպիսկոպոսի Սսոյ 'ի Պտղոմայիս, և թէ երբ սա ընդ իւր՝ 'ի դիմաց մեծի քարտուղարի կայսերն և նուիրակի Քահանայապետին՝ զեպիսկոպոս ոմն կամ զոմանս, որք կատարեցին զպատգամաւորութիւն իւրեանց. խօսեցան, վիճեցան, հաւանեցան, երդուան և կնքեցին զպայմանսն յելս 1197 կամ 'ի սկիզբն 1198 ամի. և այնուհետև չմնայր ինչ այլ, բայց պատրաստել զհանդերձանսն և թագաւորեցուցանել զԼևոն։ Սակայն և առ այս, (քանզի մեծահանդէս կամէր զայն առնել, որպէս և արժանն պահանջէր, և հրաւիրել զբազումս նաև 'ի հեռաւոր ուստեք կողմանց, առ որ դարձեալ խաղաղ և բարւոյ ժամանակի պէտք էին, թուի ինձ՝ թէ և վասն նախագրեալ ամբոխական դիպաց Խաչակրացն 'ի Պտղոմայիս, 'ի Թորոն և 'ի Յոպպէ), յերկարաձգեցան դարձեալ տարեկան մի ևս աւուրքն՝ նաւակատիքն, գէթ աշխարհահանդէս մեծագոյն տօնախմբութիւնն. սակայն և 'ի նմին ամի (1198) թագեալ էր Լևոն, գուցէ և կանխաւ ևս։

Յիշատակք պատմչաց և տարեգրաց՝ այլաձայնին յայս դէպս. և մեր զամենայն կշռելով հաւանեալ եմք՝ եթէ ոչ մի անգամ՝ այլ երկիցս և երիցս հանդէս կատարեալ է Լևոնի ընդունելութեան թագաւորական նշանաց¹. նախ՝ որպէս հաւանօրէն երևի՝ 'ի Յունաց ինքնակալէն Աղեքսէ Գ Անգելոսէ (յետ 1195 ամի). ապա յարևմտեան կայսերէն։ Անժխտելի հաւաստիք են այսմ, զի Ն. Լամբրունեցի՝ որ վախճանեցաւն 'ի 14 ամսեան յուլիսի 1198 ամին, յիշէ զթագընկալութիւն Լևոնի 'ի Տարսոն՝ 'ի նմին ամի, « ՈԽԷ, յորում ամի վերապատուեցաւ, ասէ, թագաւոր Հայոց Լևոն որ յՌուբինեանց... (և ինքնակալք » Հին և Նոր Հռոմայ) պսակեցին զսա քարամբք պատուականաւ՝ յեկեղեցի Տարսոնի, որ իմ անարժանութեամբս հովուի ». Իսկ զի ինքն Ներսէս 'ի մեծի աշխարհագումար հանդիսին ոչ ևս գտանէր ականատես, այլ յաջորդքն՝ (յերկուս այնուհետև բաժանեալ վիճակացն՝ Տարսոնի և Լամբրունի, որք և յանուանէ յիշին), յայտ ուրեմն է զի յիշեալն յիւրմէ, և գուցէ իւր իսկ կատարեալ թագադրութիւնն՝ եղև 'ի միջոցի փեբրուար-յուլիս ամսոց 1198 ամին, (զի ՈԽԷ թուական Հայոց սկսանի յ'31 յանուարի այնր փրկչական տարւոյ). Իսկ մեծագոյն հանդէսն յետ մահուան Սրբոյն, որ դարձեալ 'ի նմին ՈԽԷ թուականի, այլ 'ի վերջն կոյս կատարեցաւ, յաւուր Յայտնութեան Տեառն, այն է 'ի 6 յանուարի 1199 ամի։ Եւ եթէ ոք բացայայտ համարելով զբան Լամբրունեցւոյն՝ վասն թագելոյն նաև յարևմտեան ինքնակալէն, երկմտիցի ընդ ժամանակն, մարթի պատասխանել, թէ ոչ միայն վաղ իսկ ընկալաւ Լևոն զխոստումն թագին, այլ թերևս և զայլ նշանակսն ինչ. քանզի և Ամաւրեայ՝ ընծայելոյն 'ի թագաւորութիւն Կիպրոսի՝ որ 'ի նմին ժամանակի խնդրեաց թագ (1195-6), կայսրն՝ առաքեաց նախ գաւազան արքունի, և խոստացաւ ապա ինքնին թագել զնա. բայց ըմբռնեալ յախտէ հիւանդութեան՝ զերկոցուն ևս թագս յանձնեաց 'ի քարտուղար իւր։ Անկ է յիշել և զայս, զի խտիր մեծ կայ ընդ երկոսին խնդրողս և ընդունողս թագի. Ամաւրի՝ 'ի կայսերէ միայն խնդրէր և խոստանայր նմա շուք դնել. Լևոն՝ միանգամայն 'ի կայսերէ և 'ի Քահանայապետէ Հռովմայ. զմին՝ իբրու տիրաբար պարգևիչ համարելով, զմիւսն՝ բարեխօս. միոյն պատուադրութիւն, միւսոյն զօրդեգրութիւն ընծայելով²։

Զայս արժան է հաստատութեամբ այսպէս ընդունել. և մի որպէս մինչև ցայժմ՝ առանց կարևոր քննութեանս՝ համարել 'ի յանուարի 1198 ամի զմեծ թագընկալութիւնն, որպէս գրեաթէ առհասարակ ասեն և կրկնեն

1 Ոչ նորանշան կամ անօրինակ ինչ է այս, բազում անգամ թագ կապելն կամ ընդունել. քանզի ահա և նա՝ յորմէ զթագն ընդունել կամէր Լևոն, կայսրն Փրետրիկ Ա, բազում անգամ այսպէս արար յիւր ինքեան գլուխ, երկիցս հանդիսիւ թագեալ 'ի Գերմանիա, երկիցս 'ի Հռովմ, երկիցս 'ի Պաւիա։

2 Կարևոր թուեցաւ իրաւագիտաց 'ի խնդիրս յայս թագախնդրութեան և թագընկալութեան Լևոնի՝ գործառնութիւն Ս. Պապին. պատմիչք մեր, որպէս Կիրակոս, ասեն ոչ լոկ կայսեր՝ այլ և Պապին առաքեալ նմա թագ. կամ որպէս Գրիգոր Ակներցի գրէր առ Իննովկենտիոս, թէ արքեպիսկոպոսն Մոգունտիոյ եբեր Լևոնի թագ 'ի դիմաց Աստուծոյ և գերամբարձ եկեղեցւոյն Հռովմայ և մեծի ինքնակալին Հռովմայեցւոց. զայս օրինակ մարթ էր Պապին թագ առաքել, այլ ոչ հեղինակօրէն տուչութեամբ՝ որպէս զպսակումն՝ առ կաթողիկոս և առ արքեպիսկոպոսունս մեր։ Այս խնդիր բացայայտ վերնագրովք թղթոց Լևոնի առ նոյն Քահանայապետ. յորոց 'ի միում (1210, ապրիլ), քանզի գրեալ է 'ի լատինն, « Առ Իննովկենտ՝ շնորհօքն Աստուծոյ Ս. Քահանայապետ ընդհանրական » Եկեղեցւոյ, Լևոն նորին և Հռոմէական կայսեր շնորհօք՝ թագաւոր Հայոց », (Innocentio, Dei *gratia*, summo sancto et universali Ecclesie Pontifici, Leo, per *eamdem* et Romani imperij gratiam Rex Armeniorum), համարեցան ոմանք թէ նորին ակնարկիցէ յԵկեղեցին. սակայն 'ի գլխաւորն և յառաջինն թղթոց շնորհակալութեան վասն թագաւորութեանն՝ չիք բառն եկեղեցւոյ, իսկ այլն ամենայն հաւասար է առ գրեցելոցս. յորմէ յայտ լինի՝ զի նորին կամ նովիմբ (per eamdem) ակնարկէ 'ի նախակարգեալ շնորհօքն Աստուծոյ (Dei gratia). զոր աներկբայ ևս յայտնէ միւս թուղթ Լևոնի (յօգոստոսի, 1210) առ նոյն Քահանայապետ, պարզապէս գրելով, « Լևոն որդի բարեյիշատակ Պարոն Ստեփանէի, Աստուծոյ և Հռոմէական կայսերութեան շնորհօք թագաւոր Հայոց ». Leo, filius Domini Stephani bone memorie, *Dei* et *Romani imperij gratia*, Rex Armenie. Այսպէս և 'ի պարգևագրին զոր տուեալ է առ Տևտոնեան ասպետս (1212), և յայլն ևս թուղթս ինչ։

ամենայն օտար և ազգային պատմիչք։ Վկայեն այսմ՝ զատ յայլոց փաստից՝ և Նամականի շնորհակալութեան Թագաւորին և կաթողիկոսին՝ առ Հայրապետն Հռովմայ (Իննովկենտ. Գ), գրեալք յամսեան մայիսի այսր 1199 ամի. զի չէր մարթ զայնպիսի կարևոր գիր երախտեաց յապաղել վեշտասան ամիս, եթէ 'ի սկզբան 1198 տարւոյ կատարեալ էր հանդէս թագընկալութեանն։ — Ամաւ միով ևս յառաջ կանխէ զթագաւորութիւն Լևոնի Հեթում՝ եղբայր Ս. Ներսեսի՝ 'ի կարգի Թարգմանութեան Ժամանակագրութեան կայսերաց Հռովմայ, այսպէս ասելով վասն Ենրիկոսի Զ, (զոր նա գրէ Ե). «Սա՝ յեօթ» ներորդ ամի թագաւորութեան իւրոյ՝ պատուեաց զԼե» ւոն որդի Ստեփանէի յՌուբինեանց՝ Թագիւ, զկնի » փառաւոր արծւեացին՝ Միանցին (Մակոնցայ) և հաս» տատեաց Թագաւոր ամենայն Հայոց, և Նահանգին » Կիլիկէացոց և Իսավռիոյ. սա նորոգեաց զթագաւո» րութիւնն Հայոց՝ զբազում ամաց եղծեալն, 'ի Թուին » ՈԽԶ[1] »։ Այս թիւ՝ ըստ վերոյգրելոցս՝ սկսանի յելս յանուարի 1197 ամի, որում զուգի և եօթն ամ թագաւորութեանն Ենրիկոսի, հաշուելով 'ի յունիս ամսոյ 1190 ամի՝ յորում մեռաւ հայր նորա 'ի Սելևկիա. ըստ այսոցիկ յիշեալս 'ի Հեթմոյ թագապատուութիւն Լևոնի լինի 'ի միջոցի յուլիս ամսեան 1197 ամի և յանուարի 1198 ամի. այլ ոչ հաւաստի յայնժամ գալ արքեպիսկոպոսին Մոգունտիոյ[2] և թագելն. Թուի Հեթմոյ զերկոսին դէպսն զուգել միանգամայն, զառաջին թագընկալութիւնն և զերկրորդն կամ զերրորդ զմեծահանդէսն։ Ի դէպ է ևս համարել՝ զառաջին նուագն սոսկապէս ընկալեալ Լևոնի զթագն, պսակեալ և փառաւորեալ, այլ պահեալ յապայն զլրումն փառացն, որ էր Օծումն թագաւորութեան. և այսմ 'ի ճահ գայ յիշատակութիւն արքունի պատմչին, որ 'ի Թուին ՈԽԵ գրէ զառաքումն թագի յԱլեքսէ կայսերէ Յունաց, 'ի ՈԽԶ զպատգամաւորութիւն Յովհաննու արքեպիսկոպոսի 'ի Պտղոմայիս և զգալուստ լատին արքեպիսկոպոսին. իսկ « Ի Թուին ՈԽԷ, յամ» սեանն յանուարի յօր Յայտնութեան Տեառն, ասէ, » աւծին զԼեւոն՝ Թագաւոր Հայոց, 'ի հնազանդութիւն » եկեղեցւոյն Հռովմայ և Ըմբրուրին Ալամնաց »։ Ծանուցաւ նախաասացելովքս զի՛նչ է հնազանդութիւնն Հռովմայ եկեղեցւոյն, իսկ ըմբրուրին (ինքնակալին) անուանականն ևեթ էր տիրապատուութիւն։

Այլ մեզ՝ որ ինչ յետ տասնամեայ ըղձից, խոստմանց և ակնկալութեան Լևոնի 'ի գլուխ ել և կատարեցաւ, ըղգործոյն մեծի՝ ցանկալի էր մանրապատում և ստուգագոյն գիտել զօրինակ հանդիսադրութեանն։ Վերոյիշեալ պատմիչն հեռաւոր (Կիրակոս) այսչափ ինչ համառօտէ. « Ապա եղև ժողով բազմութեան յոյժ՝ զօրապե» տաց և զօրաց, և ազգաց և ազանց. պատրիարքն (մե» տրապօլիտն) Յունաց՝ որ նստէր 'ի Տարսոն, և կաթողի» կոսն (մաֆրիան) Ասորւոց՝ որ նստէր 'ի վանս Պարսամայ՝ » 'ի սահմանս Մելիտինոյ, և կաթողիկոսն Հայոց ամենայն » եպիսկոպոսօք. և թագաւորեցուցին զԼևոն, և եղեն » ընծայաբերք նորոգ թագաւորին կացելոյ՝ շուրջակայ » ազգքն »։ Իսկ ընտանի պատմիչն Կիլիկիոյ՝ թողեալ զարտաքինսն՝ զբնիկ առաջնորդսն միայն աշխարհին և տէրութեանն Լևոնի՝ յիշէ յականէ յանուանէ, զեկեղեցականս և զաշխարհիկս. իբրու առ մեծի իմն խնդութեանն և պարծանաց՝ վասն բարգաւաճանաց երկրի իւրոյ, զօտարսն զանց առնելով. երախտապարտ և այնու զմեզ կացուցանելով, զի նովիմբ ճանաչեմք յանուանէ զիշխանս և զիշխանութիւնս քառասուն և հինգ բերդատէր Պարոնայց և վաթսնիւ չափ բերդիցն և բերդաւանաց, և չորեքտասան եպիսկոպոսաց և արքեպիսկոպոսաց Սիսուանայ, հանդերձ երկոքումբք ևս՝ Անտիոքայ և Երուսաղեմի արքեպիսկոպոսօք, զորոց 'ի Տեղագրութեանս յիշեցաք զտեղիսն և զվիճակս. իսկ աստանօր հաճոյ է մեզ, համարիմք եթէ և ընթերցանելեաց, միանգամայն երկրորդել զանուանս տեարցն և տեղեաց, ըստ բանից պատմչին, որ ունի օրինակ զայս.

« Արդ պարտ է մեզ պատմել փոքր 'ի շատէ զոր ըստ » նորայն (Լևոնի) ժամանակի՝ վայելչացեալ էր տունս » Հայոց... և ամենայն դասուք եկեղեցականօք և պա» տուաւոր իշխանօք զարդարեալ և վայելչացեալ էր եր» կիրն Կիլիկիոյ. զոր և պատմեցից զանուանսն մի ըստ » միոջէ.

« Տէր Դաւիթ արքեպիսկոպոս Մամուեստիոյ, եւ առաջնորդ սուրբ ուխտին Արքակաղնոյն.
Տէր Գրիգորիս արքեպիսկոպոս Կապնուն, եւ առաջնորդ Արիգնոյն.
Տէր Յովհաննէս արքեպիսկոպոս Սիսոյ, եւ առաջնորդ Թրազրկուն.
Տէր Մինաս արքեպիսկոպոս աստուածաբնակ քաղաքին Երուսաղէմի.
Տէր Յուսէփ արքեպիսկոպոս Անտիոքու, եւ առաջնորդ Յիսուանցն.
Տէր Կոստանդին արքեպիսկոպոս Անարզաբայ, եւ առաջնորդ Կաստաղաւնին.
Տէր Վարդան արքեպիսկոպոս Լամբրունին, եւ առաջնորդ Սկեւռային.
Տէր Ստեփանոս արքեպիսկոպոս Տարսոնի, եւ առաջնորդ Մլիճոյն.
Տէր Թորոս եպիսկոպոս Սելեւկիոյ.
Տէր Աստուածատուր եպիսկոպոս Մծքրուն.
Տէր Յոհանէս եպիսկոպոս Սանվիլանց.
Տէր Գէորգ եպիսկոպոս Անդրիասանց.
Տէր Կոստանդին եպիսկոպոս Յոհնանց.
Տէր Գրիգոր եպիսկոպոս Փիլիպոսեանց.
Տէր Ստեփանոս եպիսկոպոս Բերդուսին.

[1] Այսպէս համարի և Վարդան Պատմիչ, ասելով. « Լևոնի, որ » այն ինչ օծեալ էր Թագաւոր, 'ի Ֆռանգաց և 'ի Յունաց առաքե» լով նմա զթագս, 'ի ՈԽԶ Թուին »։

[2] Քանզի քարտուղար կայսեր և զօրք նորա՝ յետ նուաճման Յոպպէի դարձ արարեալ էին 'ի Գերմանիա, յամի 1198, մի կարծեսցի թէ և եպիսկոպոսն Մոգունտիոյ ընդ նոսին դարձեալ էր 'ի նմին ամի. յայտ է 'ի պատմութենէ լատինացւոյ ուրումն մերձաժամանակ տարեգրի (Othon de S. Blasio), զի սա յերկրորդումն ամի (1199) դարձ արար ընդ Իտալիա՝ յերկիր իւր։ — (ՄՈՒՐԱՏՈՐԻ. Տարեգրութիւնք Իտալիոյ, ամ 1199)։

Իշխանն Պաղրսայ՝ Ատանն.
Իշխանն Ճկերոյն՝ Աւսոն.
Իշխանն Համուսին՝ Արեւգոյնն.
Իշխանն Սարվանդաւի՝ Սմբատն.
Իշխանն Հարունոյն՝ Լեւոն.
Իշխանն Սիմանակլային՝ Սիրուճի.
Իշխանն Անէոյն՝ Հեռի.
Իշխանն Կուտաֆոյն՝ Ապլղարիպ գունդուստապլն.
Իշխանն Ընկուզտին՝ Պաղտինն.
Իշխանն Թոռնկային՝ Ստեֆն.
Իշխանն Բերդուսին՝ Լեւոն եւ Գրիգոր.
Իշխանն Կանչոյն՝ Աշոտն.
Իշխանն Ֆաւռնաւսայ՝ Ապլղարիպն.
Իշխանն Կապնուն՝ Տանկրի.
Իշխանն Ճանճոյն՝ Կոստանդին.
Իշխանն Շողականն՝ Ճաւֆրի.
Իշխանն Մազոտ-խաչին՝ Սիմունն [1].
Իշխանն Թլին՝ Ըռաւպերտն.
Իշխանն Թլսապոյ՝ Թորոս.
Իշխանն Վաներոյն՝ Վասիլ մարաջախտն.
Իշխանն Բարձրբերդոյ՝ Գէորգ.
Իշխանն Կոպիտառոյ՝ Կոստանդին.
Իշխանն Մաւլովոնին՝ Աժառոսն.
Իշխանն Կուկլկայ՝ Սմբատ.
Իշխանն Լամբրունին՝ Հեթում.
Իշխանն Լուլւայոյ՝ Շահինշահն.
Իշխանն Պապեռօնին՝ Բակուրան.
Իշխանն Ասկուռսոյ՝ Վասակ.
Իշխանն Մանաշոյ՝ Հեթում.
Իշխանն Բերդկանն՝ Միխայլն.
Իշխանն Պռականոյ՝ Տիգրանն.
Իշխանն Սիւիլոյ՝ Աշինն [2].
Իշխանն Կուռիկօսոյ՝ Սիմունն.
Իշխանն Սելեւկիոյ եւ Պունառոյ՝ Կոստանցն.
Իշխանն Սինիտու եւ Կովասու՝ Ռոմանոսն [3].
Իշխանն Վէտին եւ Վէռըսկու՝ Նիկիֆոռն [4].
Իշխանն Լավզատոյ եւ Տիմիտուպօլսոյ՝ Խռսաւֆոռն.
Իշխանն Մանիաւնին՝ Լամաւսոյ, Ժեռմանկանն [5] եւ Անամուռին՝ Հալկամն.
Իշխանն Նորբերդոյ եւ Կաւմառտիասոյ՝ Սեւաստիաւսն Հեռի.
Իշխանն Անդաւշծին եւ Կուպային՝ Պաղտինն.
Իշխանն Մաղվայոյ եւ Սիկոյ եւ Պալապօլին՝ Կեռ Սակն.
Իշխանն Մանաւվղատին եւ Ալարոյ՝ Միխայլն.
Իշխանն Լակռաւենոյ՝ Կոստանդինն եւ Նիկիֆոռն [6].
Իշխանն Կալանաւնաւռսոյ, Այժուտապին, Սուրբ Սոփէ եւ Նաղլաւնին՝ Կեռ Վարդն [7] »։

*Ի դասս եպիսկոպոսաց զոր նախակարգէ պատմիչ մեր քան զաշխարհականս, չիք երկբայել զի գոյին և բազում այլ եպիսկոպոսք՝ 'ի մարզից Հայոց Մեծաց՝ հրաւիրեալք, թէ և ոչ էր մարթ ամենայն եպիսկոպոսաց համահաւաքել, ըստ Կիրակոսի. որպիսիք են, յիշեալն 'ի սմանէ Անանիա եպիսկոպոս Սեբաստիոյ, և յայլմէ յիշատակագրէ՝ Ստեփանոս Տիրացու մականուանեալն՝ արքեպիսկոպոս Վանստայոյ, դրուատեալն 'ի Ն. Լամբրունեցւոյ և վկայ արժանաւորութեան իւրոյ. սա վաղագոյն հրաւիրեալ 'ի կաթողիկոսէն 'ի Հռոմկլայ, ոչ հայելով 'ի ծերութիւն հասակին՝ չոգաւ առ նա, և անտի՝ ըստ գրելոյ ուղէկցի Նորին Յակոբայ վարդապետի, « Այլ*
*» ճանապարհ առաջի եդաւ խմում Տեառնս և կաթողի-*
*» կոսին Հայոց. զի կոչեցեալ եղեն 'ի Լեւոնէ, որ այժմ*
*» զվաղնջուցն 'ի մերմէ ազգէ և զընկեցեալն յերեսաց*
*» տեսողին՝ զթագաւորական անունն՝ զոր ունէին Հայք,*
*» սա միայն ստացաւ, զօգոստական և զծիրանափայլ*
*» պատմուճանն. և ընկալաւ օծումն՝ որպէս զմեծն Տըր-*
*» դատ, կամակցութեամբ արիական ազգին Յունաց,*
*» (փոխանակ գրելոյ Փռանկաց կամ Հռովմայեցւոց),*
*» բերեալ նմա նշան զխաչանիշ թագն. և նորա պա-*
*» տուասխրաբար կոչեցեալ զհոգևոր Տէր Գրիգորիս, զի*
*» երթիցէ և օծցէ զնա սրբարար և մաքրագործակ միւ-*
*» ռոնաւն, և պսակեսցէ զգլուխն խաչանշան դրոշմաւ. և*
*» Հոգևոր Տեառն ընդ իւր առեալ զիս Տէրն », և այլն։ Յայտ է թէ ընդ սոսին՝ առնոյր տանէր ընդ իւր կաթողիկոսն՝ և զեպիսկոպոսունս հայրապետանոցի տան իւրոյ, և զաւագ երիցունսն և զպաշտօնեայս դասակցել ընդ համորէն ուխտի եկեղեցեացն Սիսուանայ, որբազնագոյն իմն և մեծագոյն քան զյոգունս յաշխարհախումբ ժողովոցն Հայոց՝ կազմելով յայսմ հանդիսական աւուր, յետ բազում և երկար աւուրց և ամաց դադարման այսգունակ հանդիսափայլութեանց։ — Զափաքան Բաբունն Վահրամ վիպասան՝ ասէ.*

*« Ցայնժամ Հայոց բովանդակեալ*
*Եւ 'ի Տարսոն քաղաքն եկեալ.*
*Կաթողիկոսն 'ի մէջ կացեալ՝*
*Ջեկեղեցին անդ ժողովեալ,*
*Եւ օրինօք զԼեւոն օծեալ,*
*Տան Թորգոմայ թագաւորեալ,*
*Յարքայական աթոռ նստեալ,*
*Եւ 'ի բարիս եւս յաջողեալ », և այլն։*

*Մերայինք՝ կաթողիկոսի մերում ընծայեն զկատարումն թագաւորօրհնէից, որպէս վայել իսկ էր, և ոչ է ընդ այս երկբայել. իսկ օտարք, որպէս կանխեցաք ասել, ծերունւոյ արքեպիսկոպոսին Մակոնցայ Կոնրադի՝ երեսփոխանի քարտուղարի կայսերն, որով և Սրբազան Քահանայապետին, (որոյ և նախապատիւ ծիրանէկիր կարդինալ*

[1] *Յետ սորա՝ զոր Սէբմուռն գրէ Սմբատ՝ ըստ մերս օրինակաց, յաւելու և « Պարոն Սիմէոն տէր Ամուտոյն », որ թուի վրիպեալ 'ի գրչէ մերոյ Պատմչիս, քանզի մի 'ի կարևոր բերդորէիցն էր Ամուտա։*
[2] *Փոխանակ սորա՝ 'ի Սմբատ գրեալ է, « Պարոն Ճաւալին տէր » Սինիտոյ »։*
[3] *Ի Սմբատ գրի, « Պարոն Ամանոս տէր Ատաառոյ »։*
[4] *Սմբատ, « Պարոն Նիկիֆոռ տէր Վօռկիոյ »։*
[5] *Սմբատ՝ Ժամոկանն։*
[6] *Սմբատ, « Պարոն Կոստանդին տէր Լակռաւենոյ, Պարոն Նի- » կիֆօռիդ եղբայրն »։*
[7] *Սմբատ Աշօլ գրէ զՆաղլօն, և փոխանակ երեցուն այլոցն՝ կարգէ նոր անուն՝ Կոփչոփ։*

էր)․ ստոյգ և այս, զի սա նշանամատոյց և թագադիր եղև, իսկ կաթողիկոսն մեր (Գրիգոր Ապիրատ) օրհնիչ և օծիչ վսեմական գլխոյն Լևոնի։… Այլ ո՛ր էր երրորդն այն հանդիսադիր, յերկոտասան ամաց հետէ գրեաթէ անանջատ 'ի հզօրին աջոյ, և որ զոյգ նմին ընդ երկար երկնէր զնա 'ի գահ արքայական․ ո՛ր ձայնն հոգիացուցիչ՝ որ զամս քսան և հինգ հնչէր յեկեղեցւոջս Տարսոնի․ զիա՞րդ ոչ չարժեցան շրթունքն շնորհաշուք՝ որ կրկին ևս մեծացուցանելոց էին զոսն աւուրս մեծի, և անշուշտ աւանդելոց մեզ յետնոցս միւս ևս հրաշազան ճառ կացրդական։.. Յաճախ այսպիսի թուին օրէնք երկրաւոր բաստից, թերի իմն թողուլ ամենայն փառափայլ բոլորոյ մեծամեծար ուրախութեանց։ Կիսամեա՞ ևեթ կանխեալ գողացեալ էին երկինք զՍիրելին իւրեանց և զմեր և զԼևոնի, զհրեղէն լեզու և զհոգի Լամբրունեցւոյն։ Այլ թէ 'ի նմին նախանկատեալ պահու հեղման սրբագործակ միւռոնին՝ 'ի գլուխ նորընծայ թագաւորին, խայտացի՞ն արդեօք սրբասնեալ նշխարք նորին 'ի շիրմաց Սկեւռայ, զայն ոչ գիտեմ․ բայց հաւատամ եթէ ընդ հեղեղօրէն գոչման բազմագումար խմբիցն՝ Կեցցէ Սուրբ թագաւոր, աստուածաբանեաց և ինքն զխաղաղութիւն ամենեցուն յանմատուցից վերնոց խորանացն, հովանի կալով աշխարհաժողով հանդիսին։ Ո՞ գիտէ թէ և պատկեր նորա դեղանկար յորմն եկեղեցւոյն՝ ոչ ձգէր առ ինքն զաչս բազմաց, յորժամ յառաջ խաղայր կարգ օրհնութեանն՝ յիւրմէ իսկ յուսով յերիւրելոյ։ Ոչ ել 'ի դերև յոյս քո, Սուրբդ Աստուծոյ, 'ի սահմանեալ կէտ պսակման քոյդ համբիրակի․ և տաւք քոյոյ ձեռին քաղցրալուր ևս բարբառեցան 'ի տաճարի անդ Ս․ Սոփիայ, իբրև 'ի բնաշխարհէ երգոց հնչեցեալ ձայն աստուածազդեցիկ․ զոր քաղցրացի և մեզ անագանելոցս դարուք և բազում իրօք յեղյեղել աստանօր՝ ըստ այլոց յիշատակաց անցելոց *։

* Ի շարս գրոց Կարգաց եկեղեցւոյն Հռովմայ՝ թարգմանեալ էր Սրբոյն և զԿարգ օրհնութեան Ինքնակալի 'ի Հռովմ, որ «Բարձրագոյն քան զամենայն թագաւորս», ասի 'ի խորագրին․ և 'ի կարգի բանիցն՝ միջամուխ առնելով աղուաբար իմն ասէ թարգմանիչն․ «Ընթերցիր՝ թէ լինիս օծող Ինքնակալի՝ 'ի մեծ քաղաքն Հռոմ․ ապա թէ ոչ՝ վայելես միայն 'ի գիտելս, որպէս և երբեմն թարգմանողս»։ — Իսկ կարգ Թագաւորօրհնէից՝ որ գտանի յօրինակս ինչ Ձեռնադրութեան գրոց տանն Սսոյ, և որով ձեռնադրեցան և օծան Լևոնեանք մեր, այս է․

«Կարգաւորութիւն Օրհնութեան Թագաւորի, ըստ մեծի եկեղեցւոյն Հռոմայ։

«Յորժամ ժառանգաւորքն և ժողովն ընտրեն զոք բարձրացուցանել թագաւոր, զան յարքունի ապարանսն, արքեպիսկոպոսն և եպիսկոպոսունքն և ժառանգաւորքն, զգեստեալ և խաչիւք, 'ի խնդիր ընտրելոյն․ և կաթողիկոսն կենայ յեկեղեցին։ Եւ ընտրեալն ունենայ հալաւ ձիաւորի․ փիլոն, ջաղջեր և մահմէզ [1]։ Եւ աստիճանաւորքն, (որք են) Գունդստապլն [2] թագաւորական նշանաւն, և Թագադիրն թագաւն, և Սենեսջալն ծաղկիւն՝ որ է Ֆլաւուրիս [3], և Ջամբռլայն՝ թագաւորական զգեստիւն, և Պօղլերն՝ հանապոյն, և Մարաջախտն՝ Գունդստապլին նշանաւն․ պատեն զընտրեալն 'ի կանգուն՝ հագած․ և այլ լիճ ձորտերն ընդ դրուցէ բոլոր 'ի կանգուն․ և պահնորդներն այնոց ընդ դրուցէ՝ չտան թոյլ այլ ումեք մտանել»։

Եւ ասէ արքեպիսկոպոսն 'ի վերայ ընտրելոյն՝ զաղօթս․

«Տէր ամենակարող ամենայնի, որ զծառայս քո (Ա․ Ա․) պատշաճեցուցեր գալ 'ի պատիւ թագաւորութեան, տուր նմա ըստ կամաց քոց կարգել զժողովուրդս՝ որ ընդ ձեռամբ իւրով, այսու պատուովս պահպանել և փրկել, զի մի հեռասցին 'ի ճանապարհէն արդարութեան․ շնորհօք Միածնի քո՝ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի․ ընդ որում քեզ Հօր և Հոգւոյդ Սրբոյ՝ վայելէ փառք»։

«Յետ այսր առնուն զնա երկուք 'ի զգեստեալ եպիսկոպոսացն, որ մասունս 'ի նշխարաց Սրբոց ունիցին 'ի պարանոցսն իւրեանց․ և երկու խաչս և աւետարանս և բուրվառս և լապտերս․ և կղերիկոսքն զգեստեալք․ և այսպէս գնան և երգեն վերաձայն․ «Ահաւասիկ ես առաքեմ զհրեշտակ իմ առաջի քո, որ հանդերձեսցէ զճանապարհս քո առաջի քո»։ Եւ սաղմոսեն․ «Ցնծացէք առ Աստուած, օգնական է մեր»․ և զան մինչև 'ի դուռն տաճարին, և առնեն զնա դպիր։ Եւ արքեպիսկոպոսն ասէ զաղօթս զայս․

«Տէր Աստուած, որ ճանաչես զազգս և զցեղս մարդկան, զի ոչ կարեն ինքեամբք յաղթել, բայց թէ օգնականութեամբ․ վասն որոյ աղաչեմք զքեզ, խոնարհեա 'ի մեզ, և զծառայս քո (Ա․ Ա․) զոր ընտրեաց ժողովուրդս՝ կալ առաջի իւրեանց, հաստատեա քո օգնականութեամբդ․ զի կարող լիցի առաջնորդել նոցա ճշմարտութեամբ․ շնորհօք Տեառնդ մերոյ Յիսուսի Քրիստոսի»․ և այլն։

«Եւ մտեալ 'ի տաճարն սուրբ՝ և երգեն ձայնիւ սաղմոս․ «Լուիցէ քեզ Տէր յաւուր անձկութեան», 'ի լման․ և 'ի մէջ եկեղեցւոյն դադարեն։ Եւ կաթողիկոսն տայ երդնուլ ընտրելոյն 'ի վերայ Սովորական իրաւանցն [4]․ և զկնի ասէ զաղօթս զայս․

«Աստուած ամենակարող, յաւիտենական, տէր երկնի և երկրի, որ զծառայս քո (Ա․ Ա․) բարձրացուցեր 'ի պատիւ թագաւորութեան, աղաչեմք զքեզ վասն սորա, փրկեա զսա յամենայն նեղութենէ, զի լիցի հաստատիչ խաղաղութեան սուրբ եկեղեցւոյ, և զօրասցի շնորհօք քո՝ հասանել 'ի յաւիտենական խաղաղութեանդ ուրախութիւն․ շնորհօք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում»․ և այլն։

«Յետ այնր հանեն զփիլոնն․ և ձեռօք եպիսկոպոսացն մտանէ 'ի խորանն․ և անկանի առաջի սրբոյ սեղանոյն մեկն (միայնակ)․ և կղերիկոսքն երգեն զԼիթանիայն կարճ, միայն զերկոտասան առաքեալսն և երկոտասան մարտիրոսս և երկոտասան կոյս և երկոտասան խոստովանող։ Եւ զկնի զայս՝ 'ի նոյն ձայն․ «Զծառայս քո զայս՝ աղաչեմք՝ զոր ընտրեցեր թագաւոր, ընկալ․ լուր մեզ

1 Փիլոն է վերարկուն կամ քղամիդն․ Ջաղջեր՝ ստորին զգեստն, շալւէըր ըստ Թուրքաց․ Մահմէզ, մորակ կօշկաց ձիաւորաց և ասպետաց։

2 Զմիոյ միոյ 'ի պաշտօնէիցս ճառեսցուք յետոյ ուրոյն։

3 Այն է Fleur de lis, զաւազան արքունի շուշանագլուխ։

4 Այս ինքն ազգային իրաւունք և օրէնք․ որ ըստ այնմ ժամանակի՝ էին Ասիզքն (Assises) Երուսաղեմի, ըստ որոց յետ սակաւուց յարմարեցան Անտիոքայն, որով վարէին և արքունիք Հայոց, մինչ չև իսկ Սմբատայ Գունդստապլի թարգմանեալ զայն 'ի փռանկ լեզուէ, որպէս և ինքն իսկ ծանուցանէ։ Այլ զի և հին հայկական օրէնք չէին խափանեալք, յայն սակս նոյն նախանձախնդիր սպարապետ՝ եդեղ 'ի գաւառական լեզու՝ զԴատաստանագիրս Մխիթարայ Գոշի, յարմարելով պիտոյից և սովորութեանց իւրոյ երկրին։

Կարգ թագաւոր-օրհնէից՝ ութօրեայ մի պատշաճ հա-
մարին չափու ուրախութեանց, 'ի յաջորդել թագաւորի.
այլ անսահման իմն գրելի էր զչափ խնդութեան և հան-
դիսից 'ի թագաւորութեանն Լեւոնի, որ ողջոյն իսկ թա-
գաւորութեան ազգին վերականգնումն էր, որպէս գեղե-
ցիկ խորհրդածէ պատմիչն մեր, յետ նշանակելոյ զօծումն
նորա. «Եւ եղև ուրախութիւն մեծ՝ ազգիս Հայոց. զի
» տեսին վերստին կանգնեալ և նորոգեալ զտէրութիւն
» իւրեանց յերեսս Լեւոնի՝ բարեպաշտ և աստուածասէր
» արքայի»: Հնչեցին և 'ի հեռաւոր հայկական ծագաց
վկայութիւնք հրճուանաց. ժամանակագիրն Սամուէլ Ա-
նեցի կամ անընդմէջ շարայարող նորին համառօտ բա-
նից, ոչ կարէ աստանօր 'ի կարգի տարեգրութեանն՝ բայց
մեծապէս տալ փառս Աստուծոյ. «Օրհնութիւն, գովու-
» թիւն և մեծ փառաբանութիւն, բերանալիր գոհու-
» թեամբ, ամենողորմ Տեառն... զի գթացաւ 'ի մեզ...
» կանգնելով վերստին զանկեալքս և զկործանեալքս.
» յարուցանելով մեզ թագաւոր յազգէ մերմէ, զԼեւոն՝
» որդի Ստեփանէի, այր բարեպաշտ և քրիստոսասէր, և
» քաջարի 'ի պատերազմի. որ նորոգեալ պայծառացոյց
» զեկեղեցի. վասն որոյ տօնեսցուք մինչև յանկիւնս սե-
» ղանոյ, փառաւորելով զԱստուած»: — Ըստ սմին օրի-
նակի և այլք 'ի պատմչաց թագաւորութեանն՝ զգովու-
թիւնս Լեւոնի կցորդեն ընդ մեծի ուրախութեան ազ-
գին. որպէս Կիլիկեցի կամ արքունի պատմիչն, Կիրա-
կոս, և նորին ընկեր Վարդան: Սա ընդ յիշելն զօծումն
թագաւորութեանն՝ յարէ. «Եւ էր ձոխ և յաղթազգեաց
» և հարկադիր և յծատանիչ ամենայն շրջակայ ազգացն»:
Ճոխութիւն Լեւոնի՝ ոգւոյն առաւել քան գանձուք,
տօնն անզուգական, և պատմեալքն վասն յաջորդաց իւ-
րոց, առանց ինչ երկբայութեան տան գուշակել քանի՛
առատապարգև գտաւ յաւուր յայնմիկ, ո՛րքան բարձրա-

» կամօք քո. օրհնեա և բարձրացո զսա, աղաչեմք զքեզ,
» կատարեա և լո՛ւր մեզ». եւ 'ի նոյնս յարեն այլ երգ:
Երբ լիթանիայն կատարի՝ յառնեն. և ունի եպիսկոպոսա-
պետն հանդէպ իւր զԸնտրեալն. և հարցանէ զայս. Կա-
մի՞ս մնալ 'ի սուրբ հաւատս՝ որ է հաստատեալ 'ի կաթու-
ղիկէ եկեղեցւոջ, և պահել զնոյնս հաստատուն և սուրբ
սրտիւ: — Պատասխանէ. Այո՛, կամիմ: — Եպիսկոպոսա-
պետն ասէ. Կամի՞ս լինել պահապան սուրբ եկեղեցւոյ և
ամենեցուն որ 'ի սմա ժառանգաւոր կղերիկոսաց: —
Պատասխանէ. Խնդրեմ: — Եպիսկոպոսապետն ասէ.
Կամի՞ս փրկել զսոսա, և դատել թագաւորութեամբ՝ որ
յԱստուծոյ 'ի քեզ հաստատի, իրաւամբք՝ զոր հարքն քո
արարին: — Պատասխանէ. Յօժարիմ, որչափ և օգնու-
թեամբն Աստուծոյ զօրանամ. և խոստանամ խոնարհու-
թեամբ՝ սուրբ եկեղեցւոյ և ժողովրդեանս՝ զամենայնն
կատարել»:

«Դառնայ եպիսկոպոսապետն առ ժողովուրդն և ասէ.
» Խնդրէք կալ 'ի ներքոյ սորին իշխանութեան, որպէս
» խոստացաւ ձեզ պահել զձեզ. և ուղիղ հաւատով կա-
» միք հաստատել զսորա թագաւորութիւնն. և կատա-
» րէ՞ք զսորա հրամանն՝ հնազանդութեամբ, ըստ առա-
» քելոյն Պօղոսի, Ամենայն անձն որ ընդ իշխանութեամբ
» է՝ 'ի հնազանդութեան կացցէ թագաւորութեանն, որ
» է գլուխ ամենեցուն»: — Յայնժամ կղերիկոսքն և ա-
մենայն ժողովուրդն բարձեալ զձայնս՝ պատասխանեն չո-
րիցս. Այո՛, Այո՛, ամէն: Եւ առ ժամայն խոնարհի Ըն-
տրեալն. և ասէ եպիսկոպոսապետն զաղօթս զայս. «Աս-
» տուած, որ տիրես ամենայն թագաւորութեանց, օր-
» հնեա զսա թագաւոր մեզ». և այլն: Եւ ապա առեալ
երկուց եպիսկոպոսաց զձեռանէ նուիրելոյն՝ դարձուցեն
զդէմսն յարևմուտս 'ի ժողովսն. և գոչեսցեն բարձր
ձայնիւ 'ի լուր ժողովրդեանն. «Աստուածային և եր-
» կնաւոր շնորհն՝ հեղեալ աստանօր առ (Ա. Ա.) կոչէ յա-
» թոռ թագաւորութեան տանս Թորգոմայ և զարմիս
» Հայկայ. օծանիլ ըստ նմանութեան Տրդատայ, Կոս-
» տանդիանոսի և Թէոդոսի. ըստ ընտրութեան սրբոյ ե-
» կեղեցւոյ և ամենայն ժողովրդեանն. Արժանի է»: Ժո-
ղովս աղաղակէ. Արժանի է: Զնոյն երեքկնեն. ապա
դարձուցանեն 'ի սեղանն. և կաթողիկոսն ասէ. «Աս-
» տուած, արարիչ արարածոց, Աստուած ստեղծիչ աշ-
» խարհի, Աստուած որ արարեր զմարդն, ուղղիչ իշխա-
» նութեան, օծող թագաւորաց», և այլն:

«Յետ այսր եպիսկոպոսապետն օծանէ օրհնեալ ձիթով
զգլուխ նորա և զկուրծսն և զթիկունսն և զերկուս բա-
զուկսն խաչանման. և ասէ զայս. «Օծանեմ զքեզ, թա-
» գաւոր, սուրբ իւղովս, յանուն Հօր և Որդւոյ և Սուրբ
» Հոգւոյն. ամէն»: Եպիսկոպոսն ասէ. Խաղաղութիւն
ընդ քեզ: Ժողովն. Եւ ընդ հոգւոյդ քում: Օծանէ զափ-
սըն և ասէ. «Օծանեմ զձեռս քո՝ սուրբ իւղովս, որով
» օծան թագաւորք և մարգարէք. որով օծ Սամուէլ
» զԴաւիթ թագաւոր. զի այսու օրհնեալ լիցիս և հաստա-
» տեալ արքայ 'ի վերայ ժողովրդեանս՝ զոր Աստուած
» ետ 'ի ձեռս քո՝ հովուել, 'ի փառս Հօր և Որդւոյ և
» Սուրբ Հոգւոյն»: Եւ ասէ զաղօթս. «Քո է Աստուած,
» ամենայն զօրութիւն, և դու ես որ փառաւորես զթա-
» գաւորս», և այլն:

«Ապա առնուն զնա երկու եպիսկոպոսք և այլ սարկա-
ւագք և տանին 'ի սարկաւագարանն. և զգեցուցանեն
նմա երախ կտաւի հանդերձ՝ որպէս երիցու. և ապա մե-
տաքս կարմիր՝ փոքր սարկաւագի, և 'ի վերայ՝ սարկաւա-
գի նոյնպէս կարմիր, պատուական պալլոմն [1], լայնթե-
զանի և գօտէլոյծ. և նախ զմիւռոնն զգուշութեամբ՝ հացի
միջով (սրբեն). և ածեն զջուրն 'ի սուրբ տեղի. ապա յետ
զգենլոյն՝ առնուն զձեռանէ, և խաչ առաջի սեղանոյն:
Եւ ասէ եպիսկոպոսապետն զօրհնութիւնս և զորս զկնի՝
'ի վերայ արքային.

« Շնորհք Սուրբ Հոգւոյն իջցէ 'ի վերայ քո առատապէս՝ այսու
» օրհնութեամբս. և ըստ որում մեք անարժանքս կնքեցաք զքեզ
» սուրբ օծութեամբս, լցցիս և 'ի ներքոյ օծեալ օրհնութեամբ հօ-
» գևորաւ, և պարարեսցիս ներգործութեամբ շնորհաց Սուրբ Հո-
» գւոյն. զի սրբեսցիս յամենայն չարէ, և մնասցես 'ի բարի. թօ-
» թափեսցիս յանիրաւութենէ, և գործեսցես զիրաւունս. խոստ-

[1] Թուի օժոցն այն կամ վերարկու, զոր Լատինացիք կոչեն պէսպէս յեղյեղմամբ անուանն՝ Paula, Palla, ես և Pallium.

ցոյց և հարստացոյց զպարոնայսն և զլիճ ճորտս իւր. ո՛րքան տուրս վանորէից, եկեղեցեաց և եկեղեցականաց, ո՛րքանեա՛ց ազատութիւն շնորհեաց. և ո՛րքան ընծայս մեծագինս առ հիւրսն հրաւիրեալս և ինքնեկս, մեծ և փոքր իշխանս Լատինաց, յորս հարկ էր լինել Բրնձին Անտիոքայ, հաւանօրէն և Նորընծայ Թագաւորին Կիպրոսի, դեսպանաց այլ և այլ պետութեանց արեւմտից, և գործակալաց Հասարակապետութեանցն Իտալիոյ։

Ե. Ուշ է մտանալ և զհրձուական հանդէսս զոր համաշխարհի ժողովրդեանն կարգեաց 'ի վայելս, որպէս 'ի դէպ է ասել՝ բազմօրեայ աւուրբք. այն զի 'ի մեծի տօնի Ցայտ-

» բեսցիս 'ի չարէ, և արասցես զբարի. խնդրեսցես զխաղաղութիւն » սուրբ եկեղեցւոյ, և երթիցես զհետ սորին ուղիղ հաւատոյ. շնոր- » հօք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. որում վայելէ փառք », և այլն։

Այլ աղօթք. « Աստուած, որ զարդարես փառաւորես », և այլն։

« Ցետ այսր առնուն եպիսկոպոսքն զՍուրբն վաղակաւոր՝ որով հանդերձեալ է կալ յիշխանութիւն ժողովոյ, և ասեն.

« Ընկալ զՍուրբ զայս՝ 'ի ձեռանէ առաքելական աստիճանի՝ անար- » ժան եպիսկոպոսացս, և սովաւ թագաւորեսցես 'ի փրկութիւն » սրբոյ եկեղեցւոյ և ժողովրդեանս, որ ընդ ձեռամբ քո հովուին. » զոր Դաւիթ 'ի Սաղմոսին երգէ՝ յիշեա՛, Ա՛ծ զսուր ընդ մէջ քո, » հզօր, և թագաւորեա այսու ճշմարտութեամբ. և առաջնորդեսցէ » աջ քո՝ բարձրանալ սովաւ 'ի վերայ անիրաւաց և անհաւատից. զի » ապաստաւորելով Աստուծոյ՝ վրէժ խնդրեսցես յայնցանէ որք զչարն » գործեսցեն, և յորոց ոչ ունիցին զհաւատս Յիսուսի Քրիստոսի. » փրկեսցես զսուրբ եկեղեցի 'ի նոցանէ. օգնական լիցիս այրեաց և » որբոց որ 'ի սմա. զի լիցիս արժանի ժառանգել զթագաւորութիւն » անվախճան, ըստ Փրկչին մերոյ. ընդ որում Հօր միանգամայն և » Հոգւոյն Սրբոյ », և այլն։

« Ցետ այսր դնեն 'ի պարանոցն Մանեակ, և 'ի ձեռն՝ Մատանի, և արձակեն 'ի վերայն՝ փիղոն։ Եւ ասէ եպիսկոպոսապետն առ Թագաւորն.

« Ա՛ռ մատանի՝ առհաւատչեայ արդարութեան թագաւորութեան » քո. քանզի այսօր օրհնեալ ես իշխան և թագաւոր ժողովրդեանս. » հաստատ լեր և օգնական քրիստոնէութեան և քրիստոնէից հա- » ւատոյ. զի փառաւորեսցիս ընդ թագաւորին թագաւորաց՝ 'ի յա- » ւիտենական կեանսն. որում փառք յաւիտեանս. Ամէն »։

« Տայ յաջ ձեռն խաչ 'ի վերայ խնձորոյ ոսկւոյ, և 'ի ձախ ձեռն Գաւազան զօրութեան, և 'ի ծայրն ծաղիկ. և ասէ.

« Ա՛ռ գաւազան զօրութեան և արդարութեան. զարհուրեցուսցես զանիրաւսն, և առաջնորդեսցես մոլորելոցն, և ձգեսցես զձեռն » քո 'ի վերայ ամբարտաւանիցն, և կործանեսցես զնոսա », և այլն։

« Ցետ այսր եպիսկոպոսապետն հանդերձ եպիսկոպոսօքն առնուն զԹագն մեծաւ պատուով, դնեն 'ի գլուխ նորա. և ասէ.

« Ա՛ռ զԹագ և զպսակ թագաւորութեան 'ի գլուխ քո, ձեռօք » նուաստ եպիսկոպոսաց, որով պայծառանաս չքեղաշուք վայելչու- » թեամբ՝ յուրախութիւն և 'ի փառս. և լուեալ զբանս ճշմարտաս՝ » հաւատասցես խորհրդոյ քոյին պատուոյս. քանզի որպէս մեք հո- » վիւք եմք և առաջնորդ հոգւոց, նոյնպէս և դու գատաւոր մար- » մնոց, հրամանաւ Աստուծոյ։ Արդ զօրացիր և քաջ լեր, փրկել » զսուրբ եկեղեցի՝ յամենայն հակառակորդաց. և 'ի մէջ սորա կաց- » ցես անսխալ իմաստուն, և յայտնեսցիս սիրող իրաւանց ժողովր- » դեան Աստուծոյ. և թագաւորութիւնս՝ որ տուաւ քեզ յԱստու- » ծոյ՝ խորհրդական օրհնութեամբս՝ 'ի ձեռս առաքելոցն և ամենայն » Սրբոցն, լիցի քեզ առիթ պսակիլ ընդ փառաւորեալ վկայսն յան-

» վախճան կեանսն, 'ի Փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ. ընդ ո- » րում Հօր և Սուրբ Հոգւոյն վայելէ փառք, իշխանութիւն », և այլն։

« Եւ հանցէ նմա օրհնութիւն զայս.

« Օրհնեսցէ զքեզ Աստուած և պահպանեսցէ, որ կացոյց զքեզ » թագաւոր 'ի վերայ ժողովրդեան իւրոյ. նոյն ինքն արասցէ և զքեզ » յաղթող 'ի վերայ ամենայն թշնամեաց, և ժառանգեցուսցէ քեզ » զյաւիտենական կեանսն »։

Ժողովուրդն. Ամէն։

« Կղերիկոսք և ժողովուրդքս հովուեսցին ընդ ձեռամբ քո 'ի » կեանս քո »։

Ժողովուրդն. Ամէն։

« Պատուիրեա հարազատաց (քոց՝ զի) բարեմիտ լիցին և հեզք 'ի » վերայ ժողովրդեանս և աղքատաց. որպէս զի կեցեալք նորօք 'ի » հաճոյսն Աստուծոյ՝ ժառանգիցէք զյաւիտենական կեանսն.

Ժողովուրդն. Ամէն։

« Զօր տայ մեզ այն՝ որում վայելէ փառք, իշխանութիւն և պա- » տիւ, յաւիտեանս. Ամէն »։

« Ցետ այսր առնուն զնա Թագօմն պսակեալ՝ եպիսկոպոսքն և կղերիկոսքն 'ի սրբոյ խորանէն, և տանին 'ի բարձրագոյն աթոռ թագաւորութեան՝ որ եդեալ է 'ի տաճար եկեղեցւոյն. և 'ի գալն երգեն. « Տացէ քեզ Տէր » ըստ սրտի քում զամենայն խնդրուածս քո »։ Եւ յորժամ գան՝ ասէ եպիսկոպոսապետն.

« Ա՛ռ զաթոռ հայրենի, զոր ժառանգես արդարութեամբ, և » նստիս 'ի սա կամօք Աստուծոյ և հօր քոյ, և հաստատիս օրհնու- » թեամբ եպիսկոպոսացս ծառայից Աստուծոյ։ Յորժամ նստիս 'ի » կղերիկոսս՝ պատուեսցես զնոսա յամենայն տեղւոջ, զի մեօք խօսի » Քրիստոս. որ պահեսցէ զքեզ 'ի փառս՝ այժմ, և բարձրացուսցէ 'ի » յաւիտենական կեանսն, 'ի փառս անուան իւրոյ, որ է օրհնեալ » յաւիտեանս »։

« Ապա նստուցանեն զնա եպիսկոպոսքն յաթոռն. և ասէ եպիսկոպոսապետն զաղօթս զայս.

« Տէր մեր Յիսուս Քրիստոս, որ է թագաւոր թագաւորաց և տէր » տերանց, որ թագաւորէ ընդ Հօր և Սուրբ Հոգւոյն, հաստատեսցէ » զքեզ յայսմ աթոռոյ 'ի վերինն, և հանգուսցէ յիւր արքայութիւնս։

« Ցետ այսր համբուրեն զԹագաւորն եպիսկոպոսքն և ամենայն ժողով կղերիկոսացն. և ամենեքեան զուարճանան, և հարկանեն զզանգակսն ամենայն քաղաքին. և եղանակեն, Դիէ Տէում լաւտամըզ[1]։ Եւ երգեն զերգս զոր ասացեալ ասեն մեծի Սուրբ Լուսաւորչին մերոյ Գրիգորի[2], 'ի բարի և 'ի սուրբ արքայն Տրդատ.

« Ի վերին 'ի յօգնականութենէ, 'ի վերին 'ի յօգնա- » կանութենէ՝ ծագեցաւ քեզ հանդէս բարեպաշտու- » թեան. որ առատապարգև բնաւորաբար զքաղաքավա-

1 Այս է Te Deum laudamus, Զքեզ, Աստուած, գովաբանեմք։

2 Այլք համարին Մովսիսի Խորենացւոյ երգեալ զայս նուագ։

նութեան Տեառն հանդիպեցաւ և կարգ օծմանն 'ի Թագաւոր, յորում սովորութիւն էր ազգիս 'ի վաղ ժամանակաց, աշխարհախումբ տօն ցնծութեան կատարել, ևս և եկեղեցական օրինօք, Ջրօրհնեաց արարողութեամբ, ընդ Նմին քաղաքական հանդիսիւ և պէսպէս զբօսանօք. որոց առաջին մարթ է գրել զզօրահանդէսն, զոր ոչ խափանէր, այլ մանաւանդ յորդորէր եղանակ երկրին Լեւոնի, մանաւանդ զի 'ի Տարսոն 'ի ջերոտ ծովակողմն կատարեցաւ հանդէսս այս մեծ, ուր գրեաթէ չերևի ձմեռն, և բարեխառնագոյն յայնժամ են օդք քան 'ի գարնայնի և ամարանի։ Զիք երկբայել զի չքեղագոյն յոյժ եղեն ամենայն հանդէսք յայսմ ամի տօնի Ջրօրհնեաց և պսակ-

» րութեան ունիս իշխանութիւն, առ 'ի յանդիմանել
» զվատթարացեալսն, և 'ի փառաւորել զլաւագոյնսն։
« Ըստ Եզեկիային քեզ տիւն դարձեալ 'ի վերջս՝ տացի
» նշան. ըստ Եզեկիային քեզ տիւն դարձեալ 'ի վերջս՝
» տացի նշան, երկարելով զժամանակս. և ըստ քաջին
» Յեսուայ՝ արեգակն 'ի քեզ առկայսցի, մինչև 'ի վախ-
» ճան պահանջեցեալ զվրէժս 'ի Հագարայ և 'ի Քանա-
» նացւոյն. և զանվախճան խաղաղութիւն աշխարհիս
» Հայոց ընձեռեսցես։
« Քանզի անյիշաչար հեզութեամբ, քանզի անյիշաչար
» հեզութեամբ, և մեծաւ զղջմամբ՝ ըստ արքային Դաւ-
» թի, աստուածածանօթութեան շնորհն 'ի քեզ դարձցի.
» և 'ի սակս այսմիկ՝ հատանող տապարն 'ի բաց դիցի. և
» տնկագործականին մաղթանք ժամանեսցեն 'ի կենդա-
» նական թզենիդ. պտղալից արդարութեամբ խաղա-
» ղասցի կենցաղավարութիւնդ քո, հանդերձ զաւակօք
» և համբաւով բարեաց »։

« Եւ եպիսկոպոսապետն կատարէ զպատարագն մեծաւ հանդիսիւ և ուրախութեամբ. և ասէ աղօթք պատարագի. « Աստուած, որ զարմանալիդ ես 'ի գործս քո », և այլն։ Ի վերայ ժողովրդեանն.

« Աստուած ամենակարող, որ յամենայնի խնամես զժողովուրդս
» քո, օրհնեա զսոսա և արժանի արա յաւիտենական Թագաւորու-
» թեանդ. շնորհօք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում »,
և այլն։ — Աղօթք արքային. « Աստուած պարգևեսցէ քեզ ուժ-
» գնութիւն և կարողութիւն 'ի վերայ ամենայն հակառակորդաց քրիս-
» տոնէից, առ 'ի հաստատել զեկեղեցի խաղաղութեամբ. որպէս զի
» Յաղթեսցես 'ի Թագաւորութեանդ, և առաջնորդեսցես զօրաց քրիս-
» տոնէից՝ աներկիւղ յամենայնի. որով պահեսցես զժողովուրդս խա-
» ղաղութեամբ, և ժառանգեսցես զյաւիտենական կեանսն ընդ ա-
» մենայն Թագաւորս բարեպաշտս, յաւիտեանս յաւիտենից »։ —

« Կատարումն պատարագի. « Բարերար տէր », և այլն։

« Ելանեն յեկեղեցւոյն. և հեծանի Թագաւորն 'ի ծածկած երիվար. և Սպարապետն (գունդստապլն) հեծանի միայն առաջի Թագաւորին, և Նշանակն արքունի 'ի ձեռին իւրում. և Թագադիրն յաջ դիհ Թագաւորին, ունելով զմիւս Թագն 'ի ձեռին. և Սենեսկալն 'ի ձախ դիհն. և Պօղլերն զկնի, և Ջամբռլայն զկնի Թագաւորին, Թրաքամբ. և Մարաջախտն ունելով զնշանակ Գունդստապլին՝ գնայ առաջի Նորա. և այլ լիճ ճորտերն՝ Թրաքամբ պատեալ զԹագաւորն, և ամենայն երգովք և փառազարդեալք գան յապարանս արքունի։ Եւ մտեալ 'ի ներքս՝ նստի Թագաւորն յաթոռ Թագաւորութեան. և աստիճանաւորքն կանգնին յաջակողմն և 'ի ձախակողմն. և Գունդստապլն Նշանիւն հանդերձ՝ առաջի Թագաւորին. և Մարաջախտն առ դրանն՝ Նշանիւ Գունդստապլին։

« Եւ յորժամ կամենան սեղան բերել, Նա տայ համայնք[1] Սենեսկալն՝ Ջամբռլային, առնուլ ջուր և իւրով ձեռամբ լնուլ 'ի ձեռս Թագաւորին։ Եւ յորժամ դնի սեղան՝ Նա վստահանայ Սենեսկալն զՏաղիկն[2] 'ի լիճ ճորտ մի պատշաճաւոր. Նոյնպէս և Թագադիրն զմիւս Թագն, և Գունդստապլն զնշանակ Թագաւորին յԱսպատայարն[3]. և Մարաջախտն զնշանակ Գունդստապլին՝ յաւագ Զայուշն. և Նստին ճաշակել. և Սենեսկալն և Պօղլերն սպասաւորեն՝ ըստ իւրեանց աստիճանին։ Եւ յորժամ կատարի ճաշակմունսն, դարձեալ կանգնին աստիճանաւորքն՝ որպէս յառաջ գրեցաք՝ ըստ իւրաքանչիւր գործոյն, և կատարեն ուրախութիւն պատշաճաւոր մինչև ցինն ժամ։

« Եւ յորժամ կամի Թագաւորն փոխել զԹագաւորական զգեստն՝ գայ Գունդստապլն և Թագադիրն և Սենեսկալն, մեծարեն զԹագաւորն, և երթան առաջի Նորա մինչև 'ի Ջամբռն. և Ջամբռլայն կենայ 'ի ջամբռն. և ունենայ զզգեստն. մտանեն և այս չորս աստիճանաւորքս, և փոխեն զզգեստ Թագաւորին և զԹագն. և դառնան առաջի Թագաւորին մինչև յաթոռն. և Նստի Թագաւորն որչափ և կամի։

« Յետ այսորիկ գան եպիսկոպոսքն և կղերիկոսքն, և կատարեն զժամ երեկոյին յարքունի եկեղեցին։ Եւ բերեն սեղան, և կատարեն որպէս վերոյ գրած է. և մտանէ Թագաւորն և խաղաղանայ յամբոխէն։ Եւ շնորհէ զերիվարն (իւր) Թամբօք և սանձիւք՝ թէ ոսկի և թէ արծաթի՝ Գունդստապլին. և տանըղն լինի Մարաջախտն. և Գունդստապլն զիւր երիվարն շնորհէ Մարաջախտուն. Մարաջախտն զիւր երիվարն՝ Աւագ չաւուշին։ Եւ Թագաւորն շնորհէ հալաւ և գօտի ոսկի՝ Թագադրին. և Սենեսկալուն՝ զսինին[4] յ'որ և ճաշակէ Թագաւորն, թէ ոսկի և թէ արծաթի, և զզգալն. և Ջամբռլային՝ զդաշտիչնն և զդասպրիկն[5], թէ ոսկի է և թէ արծաթի. և Պօղլերին՝ զուբն և զքսեստին, թէ ոսկի և թէ արծաթի. և այլ լիճ ճորտերոյն և գործաւորացն՝ տայ շնորհս ըստ կամաց իւրոց։

« Եւ գիտել պարտ է, զի Թագուհին ընկեր է Թագաւորին և մի մարմին և Թագակից. վասն այնորիկ պարտ է աստիճանաւոր տիկնացն սպասաւորել Նմա, և առնուլ 'ի Նմանէ շնորհս, որպէս իւրեանց արքն 'ի Թագաւորէն. զի և Նոքա մի մարմին են ըստ աստիճանաւորացն՝ Աստուծոյ օրինօք։ — Իսկ վաղիւն գան յարքունիսն իշխանքն և տիկնայքն և սպասաւորքն, իւրաքանչիւր գործովն՝ ուրախութեամբ, աւուրս՝ որչափ և կամին. բայց գրեմք որ պատշաճն՝ ութ օր է »։

1 Հրաման։
2 Շուշանածայր գաւազանն արքունի։
3 Միւս ևս պաշտօնեայ, որ է Հեծելապետն, ըստ օրինի բանակին Պարսից, որպէս և յետագայն (Զայուշ՝) ըստ Թուրքաց։
4 Սինի, Թուրք բառ և այս, որ է Սկուտեղ կամ Խան։
5 Տաշտն կամ լուացարանն և կուժն. Լէհէն, Իպրիք Թուրքաց։

# ԴՐՈՒԱԳ Ե.

Ա. Գոհաբանութիւն վասն թագընկալութեանն. — Բ. Իննովկենտիոս Գ. եւ Լեւոն. — Գ. Ցօրինուած եւ յանձանձանք թագաւորութեան Լեւոնի. — Դ. Դրամ հայկական. — Ե. Պաշտօնեայք եւ Զինուորք. — Զ. Դաշինք վաճառականութեան ընդ Արեւմտեայց:

Ա. Յետ թագընկալութեանն՝ միւս ևս հանդէս չքով կատարեաց Լեւոն, զմկրտութիւն թոռնեկին իւրոյ՝ Ռուբինի–Ռեմունդի ժառանգին Անտիոքայ, 'ի ձեռն պապական իւրոյ՝ արքեպիսկոպոսին Մոգունտիոյ. զի և ըստ եկեղեցական իրաւանց՝ յանկագոյն էր սմա կատարել զխորհուրդն, 'ի հօրէ լատին գոլով երախային: — Մեծամեծ պատիւս և պարգևս ընկալաւ, որպէս արժանն պահանջէր, Նուիրակս այս Քահանայապետին և կայսեր, 'ի թագաւորէ Լեւոնէ և 'ի կաթողիկոսէն Գրիգորէ. զորոց և գրով և բանիւ ծանուցանէր առ Իննովկենտ Գ., յորժամ թղթովք թագաւորին և կաթողիկոսին առաքեցաւ առ նա, և առանձինն իբրև դեսպան 'ի Լեւոնէ. վասն որոյ և Քահանայապետն գոհութեամբ յիշէր զայս առ Լեւոն: Թուղթ սորա (Լեւոնի) թուեալ է 'ի 23 մայիսի տարւոյն (1199). 'ի նմին աւուր թուի գրեալ և կաթողիկոսին (զի պակասէ 'ի պատճենի սորին՝ թուականն), որոց երկոցուն ևս պահին լատին թարգմանութիւնք հնագիրք 'ի դիւանս Վատիկանի, հայերէն բնագրացն անհետ գոլով: Վայելուչ է սկիզբն կաթողիկոսական թղթոյն, ողջունելով ոչ լոկ զՔահանայապետն, այլ և ըզդասս ուխտի եկեղեցւոյ Նորա, որում ընծայէ և զինքն որդի, և մաղթէ 'ի պահպանութիւն նոյին. ծանուցանելով, Ա. զգալուստ արքեպիսկոպոսին Մոգունտիոյ և բերել թագ իբրև առ 'ի յԱստուծոյ, 'ի Քահանայապետէն և 'ի կայսերէ Հռովմայեցւոց [1], վասն որոյ և երեցուն գոհութիւն. Բ. զի երբ մատոյց նա զպայմանսն կամ զպատուէրս (præcepta) Պապին, և ընկալաւ ինքն և ուխտ եկեղեցւոյ իւրոյ հաւանութեամբ եպիսկոպոսացն, որք սփռեալ են ընդ ամենայն երկիր, և բազումք են շնորհօքն Աստուծոյ. (Qui sunt in multis terris et sunt multi per Dei gratiam). և զի այսուհետև մեք ձեր եմք և դուք մեր, ասէ, Գ. պարտիք տալ մեզ օգնութիւն, զի 'ի վիշապաց թշնամեաց միջի պաշարեալ կամք: — Ի ծանօթութիւն ոգւոյ և ոճոյ Լեւոնի 'ի դէպ վարկանիմ թարգմանել զայս առաջին ծանօթ թուղթ նորա՝ առ Քահանայապետն Իննովկենտիոս, կարգելով 'ի ստորև և զբնագիրն:

« Ամենարգոյ 'ի Քրիստոս Հօր և Տեառն ԻՆՆՈՎԿԵՆՏԵՍԻ, շնորհօքն Աստուծոյ ծայրագոյն Քահանայապետի և ընդհանրական Պապի, և այնքանոյ և այնպիսւոյ պատուոյ արժանաւորի, ԼԵՒՈՆ, նովին և Հռոմէական ինքնակալութեան շնորհօք՝ Թագաւոր Ամենայն Հայոց, ողջունիւ զանձն և զոր ինչ կարէ (նուիրէ):

« Փառք, գովութիւն և պատիւ Աստուծոյ ամենակալի, որ կամեցաւ զՔեզ՝ զայդքան և զայդպիսի հովիւ վերակարգել եկեղեցւոյ իւրում, ըստ արժանեաց բարի բարի արդեանց քոյոց, և զայդքան բարգաւաճ և հաստատուն շինուած՝ 'ի վերայ հիման Առաքելոց կանգնել, և զայդքան լոյս ճրագի 'ի վերայ աշտանակի եդեալ՝ սփռել հաճեցաւ ընդ համօրէն ծագս երկրի, 'ի փրկութիւն համանգամայն քրիստոնէից: Ի ձեռն շնորհաց լուսոյդ՝ փրկաբեր խրատուք գերարգոյ հօր մերոյ արքեպիսկոպոսին Մոգունտիոյ՝ հրահանգեալք և տեղեկացեալք, զամենայն առ 'ի յԱստուծոյ յանձնեալն Մեզ թագաւորութիւն ընդարձակ յոյժ եւ մեծատարած, և զհամօրէն Հայկազնեայս՝ որք այսր անդր 'ի սփիւռս հեռաւոր կողմանց, 'ի միութիւն սրբոյ Հռովմէական Եկեղեցւոյ, Աստուծոյ ողորմութեանն ներշնչելով, վերակոչել փափագեմք և ըղձանամք: — Յետ այսորիկ, զտագնապս, զաղէտս, զաղքատութիւնս և զտկարութիւն թագաւորութեանն Ասորւոց երկրի և զմերս, 'ի ձեռն նորին նախասացելոյ Մոգունտիացւոյ, (քանզի դժուարին է մի ըստ միոջէ գրով բացատրել), բարեգթութեան քում յայտ առնեմք: Նա ինքնին բացատրեսցէ զամենայնի ստուգութիւն, ոչ զանց արարեալ և զիւրացս ծանօթութեամբ: Այսպիսեաց տառապանաց և ճգնաց՝ տարագրեալքս 'ի հօլտիս արտասուաց՝ ժուժկալեալ տարաք մինչև ցայժմ. այլ առանց յուսոյ նպաստից և օգնականութեան Ձերոյ, ոչ ևս բաւեմք տանել: Եւ քանզի ոչ է արժան նախանձու տան Տեառն զաղջանալ 'ի սիրտս՝ և Ձեր և Մեր, (ոչ ուսուցանել ինչ կամիմ բանիւս), սիրել զվայելչութիւն տանն այնորիկ, և 'ի պաշտպանութիւն նորին պարիսպ ածել, պարտ և արժան է մեզ. որպէս զի զխռնութիւնս յարուցելոցն 'ի վերայ նորին՝ թշնամեաց Խաչին, գործակցութեամբ շնորհացն Աստուծոյ, 'ի մի խմբելով զզօրութիւնս ոգւոյ, զիմակալեալ հերքեսցուք:

« Վասն այսորիկ 'ի ծունր իջեալ, աղաչեմք զքո զըթութիւնդ, զի որքան և է հնար, աստուածայնով նկա-

[1] « Noveritis, Domine, quod ad nos venit nobilis, sapiens et sublimis Archiepiscopus Moguntinus, qui ad nos attulit ex parte Dei, et ex parte sublimitatis Ecclesiæ Romanæ, et ex parte magni Imperatoris Romanorum sublimem Coronam, et coronavit Regem nostrum Leonem.

38 ամաց, միով ամաւ յառաջ քան զհանդիսական թագաւորութիւն Լեւոնի (8 յուն. 1198, և ձեռնադրեցաւ 'ի 22 փետր.), և երեք ամբ նախ քան զԼեւոն աւարտեաց զկենացն շրջան: Ի գերագոյն ծայր իշխանութեան ամբարձ սա զքահանայապետականն. օրինադիր, սաստիչ և ուղղիչ կալով թագաւորաց և իշխանաց, միանգամայն և շարժիչ հոգւոյն 'ի խաչակրութիւն. խնամոտ նախանձախնդիր ուղղութեան վարուց, մանաւանդ եկեղեցական դասուն. ոչ որ իշխեաց' մանաւանդ 'ի ժամանակակցացն' եպերել զնա, որպէս զայլս ոմանս 'ի յետագայ դարու. քանզի հաստատր իշխանական ոգւոյն' փայլէր և անբագիւտ վարուք և հանճարով: Ընդ այսպիսում վեհի' որ զամս տասն պնդեալ ջատագով կայր կայսերութեան Ոթոնի Պրունզվիքայ ընդդէմ Սուեւացւոյն Փիլիպպեայ, և երկարագոյն եւս ամս անդուլ աշխէր զզօռ թագաւորն Փռանկաց Փիլիպ-Օգոստոս' վերընդունել զարձակեալն իւր կին օրինաւոր, և զրաւեալ հրակաւ զգլուխ ընդ բանիւ աղարտել կարողացուցանէր, և որ 'ի վերայ կրկնակի գերանակ իշխանութեանցն' փայլէր աշխարհազօրով բաւութեամբ, ընդ հաւ Լեւոնի գործ ունել. ոչ միշտ միաբան ունելով տեսութիւն և կամս, և հարկ' որպէս ընդ անհնարնդիմանալի վէմ բաղխիլ և յետս նահանջիլ. սակայն և մանկակաչեալն երբեմն Լեւոնական' ոչ մոռացեալ ըզգաստութիւն իւր' բաղխեցաւ ուժգին և ըզգուշեաւ, և առաջի Իննովկենտեայ իսկ Գ. գտեալ Լեւոն մեծոգի, որպէս միշտն. յանձն առեալ երբեմն և ըզնզովս, վստահանալով մխիթարանս, բողոքելով ընդդէմ նուիրակացն. այլ արգահեալ երբէք ոչ զՔահանայապետն, զոր միշտ յարգէր, և յարգեալ լինէր 'ի նմանէ' և յայնմ իսկ պայմանի. և հայր' գորովեալ սիրելի որդի կոչելով 'ի նմանէ' 'ի հաւան եղանէր, ոչ անփառունակ. որպէս ցուցցի մի ըստ միոջէ յառաջիկայդ: — Բայց նախ քան զմնիլ 'ի ճառս երկար և բազմակնճիռն գիպուածս, արժան է գէթ 'ի հարեւանցի ակն արկանել յատենին օրէնս' տէրութեան և երկրին Լեւոնի:




217. Իննովկենտիոս Գ, Քահանայապետ.

Գ. Յետ հարիւր կամ հարիւր և քսան ամաց իշխանապետութեան Ռուբինեան Պարոնաց' 'ի թագաւորութիւն փոխելով, հարկ էր և քաղաքական հրահանգաց և վարշութեան և պաշտամանց ինչ և անուանցն իսկ փոփոխել կամ նորոգանել, և հաստատութիւն առնուլ հին և նոր կարգաց. զորս մշտարթուն աշալրջութեամբն և ժրութեամբ' յարգարէր Լեւոն, ինքնին և հաւատարմօքն և գիտնօք ատենիւք, առաջի աչաց ունելով զԱսիզս Երուսաղեմի թագաւորութեանն. և ըստ պատմչին, « Որ և » խնամոյր թէ զոյ այր պիտանի 'ի գործ ինչ և աշխարհի, » առաքէր և կոչէր խոստմամբ, և բերեալ հանգուցանէր » առատաձիր պարգեւօք »: Նա և ոչ միայն ազգայինք' այլ և օտարազգիք' մանաւանդ Փռանկ իշխանք և զօրականք' ինքնակամ յօժարութեամբ դիմէին 'ի ծառայութիւն նորին, ակնածելով և ականատեսք զօրով մեծի հանճարոյ նորա, զօրութեանն և փառաց, զորս կրկին արտափայլեցոյց թագն արքունի, և սերտեաց 'ի նա զսիրտս բազմաց. և թուէր իմն առաւել ընդ բոլորեալ սահմանս տէրութեանն' սփռել ճաճանչս լուսաւորս և կենդանացուցիչս 'ի նորոգութիւն, 'ի շինութիւն, 'ի բարգաւաճանս ազգի ազգի հնարից և հայթայթանաց, արուեստից և ուսմանց, քաղաքական, եկեղեցական և վաճառական կարգաց. յոր ոչ սակաւ աստառ լինէր գաւազանն' և պատկառելի ծերութիւն և պայծառական զարմն կաթողիկոսին Գրիգորի Ապիրատի: Ամենեցուն այսպիսի ըստ իւրաքանչիւր պիտոյից 'ի թիկունս հասանէր ամենահնարն Լեւոն, թէպէտ անձամբ թէպէտ 'ի ձեռն պաշտօնէիցն. ոչ պակաս քան զպերճութիւն իւր 'ի վերայ եօթանասուն և երկու բերդաստանացն պարսպաց' տարածանելով զհովանին' և « 'ի վանորեայս և յուխտեալ տեղիս », ըստ պատմչին: Քանզի գիտելով զմեծ օգուտ և ազդումն կրօնական տանց' 'ի բարոյական բարգաւաճանս ազգին, միանգամայն և ըստ հայրենի բարեպաշտութեանն, զի ոչ փառասիրութիւն, ոչ երկրակալութիւնքն և ոչ որ յայն սակս կիրք և սաստկագոյն երբեմն նախանձ, ոչ շիջուցին 'ի նմա զհաստատութիւն հաւատոյն և պաշտօնասիրութիւն. այլ միայն ընդ թագաւորական պերճութեանն և ընդ մեծոգի առատութեանն' յաւելոյր 'ի հոգեւորն և զմարմնաւոր հանդիսից ճոխութիւն. որով, ասէ պատմիչն, « զարդարեաց զտունս Ջատկաց (որպէս » տեսաք և զՅայտնութեանն Տեառն) մեծահանդէս ժո-

» զօրօք և մեծածախ սեղանով ». ոչ այնքան ինքն յինքեան խնդալով՝ որքան 'ի խնդացուցանելն զայլս։

Թէպէտ և չէ յայտնապէս գրեալ ժամանակագրաց զայս ինչ կամ զայն գործոց և շինութեանց նորա, այլ երևի առանձինն ուչ եդեալ, նախ, յամրութիւն սահմանակալ բերդորէից և կապանաց կամ անցից լերանց և գետոց. երկրորդ, շինութեան և վայելչութեան, միանգամայն և անմատոյց ամրութեան աթոռանիստ քաղաքաւանին և բերդին Սսոյ, որպէս վկայէ հիւր նորին ականատես՝ Վիլպրանտ, ըստ որում և 'ի Տեղագրութեանս նշանակեցաւ. ըստ այնր օրինակի առնէր շինութիւնս և 'ի հնագոյն քաղաքամայրն՝ 'ի Տարսոն, և յայլս ևս, մանաւանդ յեկեղեցիս նոցին. ոչ միայն իւրոց ազգայնոց ձեռն կարկառելով օգնականութեան, այլ և Յունաց և Լատինաց, ըստ խոստման իւրում առ Քահանայապետն, ընդարձակելով զժառանգութիւնս եպիսկոպոսաց նոցին 'ի գլխաւոր քաղաքսն։ Իսկ յիւր սեփականսն՝ առաւել իմն խնամով և սիրելութեամբ մեծարեաց և մեծացոյց զդաստակերտ իւր՝ զվանս Ակներոյն, ուր և կամեցաւ հանգուցանել զբազմախոհ գլուխ իւր՝ 'ի հասանել անհրաժեշտ օրհասին։

Առ քաղաքական տեսչութիւն երկրին Սիսուանայ, յորում թերևս առաւել քան զհամազգիս՝ բնակէին օտարազգիք, Յոյնք, Ասորիք և Փռանկք, գրեաթէ անհրաժեշտ 'ի դէպ էր Ասիզաց օրինօքն վարիլ, որով և ամենայն քրիստոնեայ պետութիւնք Ասորւոց երկրին. ապա եթէ ոչ՝ հակառակութիւն լինէր յայլալեզու և յայլակրօն ժողովուրդսն. և զի իւրաքանչիւր 'ի պետութեանց յարմարեալ էր ինքեան զԱսիզսն, որ գրով և որ սովորութեամբ, Հայք ընտելացեալ էին յԱնտիոքեայցն սովորոյթս. ոչ վասն մերձաւոր դրակցութեանն միայն, այլ զի և նոցին Բրնձոց արդարիք կամ լիճ համարէին երբեմն, և 'ի նոցանէ ընդունէին զասպետութիւն և զհեղինակութիւն տէրութեան։ Առ թագաւորութեամբ Լևոնի՝ չև ևս էին յերկրեալ և գրով սահմանեալ Ասիզք Անտիոքայ, — որք յաւուրս մեր յայտնեցան ըստ բաղդի և 'ի պատիւ հայերէն դպրութեանս մերոյ. զի փռանկ բնագրին ցարդ անյայտ մնացեալ՝ գտաւ հայերէն թարգմանութիւն գունդստապլին Սմբատայ՝ արարեալ յերրորդ քառորդի ԺԳ դարու, և օրինակն՝ (զոր արդ 'ի ձեռին ունիմք), գրեալ է յամի 1332 հրամանաւ Լևոնի Դ. — բայց անգիր աւանդութեամբ և սովորութեամբ ընկալեալ էին 'ի Հայս, ևս առաւել 'ի թագաւորութեան Լևոնի։ Մատեանն տպագրեալ և թարգմանեալ առ 'ի մէնջ լցցէ մասամբ զքննասիրացն փափագ՝ եթէ կամիցին գիտել զօրպէսն օրինացն այնոցիկ, զոր ծանր համարիմք յեղյեղել աստանօր։ Բայց չատ լիցի այսչափ ինչ ասել և յիշել, զի յառաջ քան զԼևոն՝ նախորդք իւր առաւել բռնարար քան իրաւամբք տիրապետող համարեալ լինէին. վասն որոյ որ 'ի բերդատեարցն ոք կարէր վստահանալ յամրութիւն և 'ի զօրութիւն, կամ յօգնականութիւն կայսեր Յունաց, ազատ համարէր զինքն յիշխանութենէ Հայոյն. Թագաւորութիւն Լևոնի՝ հարթ հաւասար կացոյց զամենեսեան ընդ իւրով։ Լևոն՝ ծանուցաւ թագաւոր բովանդակ Կիլիկիոյ և Իսաւրիոյ և յարելոցն 'ի նոսա մասանց աշխարհաց, գերիշխան (suzerain) ամենայն իշխանաց. այլ ոչ բացարձակ տէր տերանց և ունող երկրին՝ վաղուց 'ի բազում մասունս կոտորելոյ, և ստացելոյ 'ի բազմաթիւ տերանց, կամ լաւ ևս ասել՝ 'ի բերդատեարց. քանզի բերդքն էին և գահ նոցին և հաստատիչք և պահպանիչք տէրութեանցն և պայազատութեանց. որով բովանդակ երկիրն՝ 'ի թագաւորել Լևոնի՝ եղև միաբանութիւն իմն ազնուապետական, առաւել կամ նուազ ազատութեամբ իւրաքանչիւր տեարց, ըստ նախնեաց օրինի՝ Իշխանն, և ըստ նորոյն՝ Պարոնն անուանելոց, որք պարտականք էին առ թագաւորն՝ լճութիւն (ծառայութիւն). այս ինքն, ճանաչել զնա վեհագոյն գլուխ երկրին և իւրեանց, 'ի նմանէ ընդունել զհաստատութիւն պայազատութեան իւրեանց կամ գյաջորդութեանն, տալ նմա զօրաժին 'ի ժամանակի պատերազմի, երթալ 'ի կոչ նորին 'ի Մեծ կամ 'ի Վերին Ատեան արքունի (Haute Cour), որ դատէր և ուղղէր զկարևոր պէտս տէրութեանն։ Ոչ արք միայն այլ և կանայք պայազատք՝ պարտական լինէին լճութեան օրինաց, բաց յանձամբ զինուորութենէ, և կոչէին ևս Պարոնք։ Առաւել պարտականք պատուադրութեան և ծառայութեան՝ համարէին ընդունողքն կալուածոց և պաշտամանց 'ի թագաւորէն. յորոց՝ եթէ յանցաւորք գտանէին՝ կարէր նա 'ի բաց առնուլ զտուրսն. իսկ յայլոցն ոչ կարէր, բայց եթէ դատաստանաւ Վերին ատենին, և կամ 'ի պակասել պայազատաց տոհմիցն. և այնուհետև խառնեալ լինէր յարքունի ստացուածս. զի և մեծ մասն մի երկրին և բերդք ամուրք՝ սեփական ժառանգութիւն էին թագաւորացն, որք և աճեցին ըստ նուազել և ազգատ լինել տոհմիցն, և ըստ թուլանալ օրինապահութեան, որով աճեաց թագաւորին իշխանութիւն, երբեմն և բռնակալութիւն։ — Արդ, առ մերովս Լևոնիւ, որպէս բազում անգամ յիշեցաւ, ասին եօթանասունևերկու բերդից տեարք լինել այսպիսիք, կոչեցեալք նմին Լիճ ձորտք, այսինքն՝ կապակցեալք ընդ նմին և պարտականք 'ի վերոյիշեալ սպասարկութիւն, որք և Արք հաւատարիմք կոչէին (Fideles homines). թերևս կիսով չափ, աւելի կամ նուազ, օտարազգիք, Յոյնք, Փռանկք և Ալամանք, հանդերձ ասպետօք երեցուն կարգացն (զորոց լիցին մեզ բանք յետ սակաւուց), որք յառաջագոյն կամ 'ի նմին Լևոնէ ստացեալ կալուածս՝ գոգջիր և զնոյն պարտս լճութեան ունէին։ Շատք 'ի լիճ պարոնայս և բերդատեարց՝ բաց յիրաւանց խորհրդակցութեան Վերին ատենին՝ չունէին այլ ինչ մասն 'ի քաղաքական վարչութեան. այլ ոմանք կարգեալք էին 'ի վերայ մեծամեծ պաշտամանց և տեսչութեանց, վասն որոյ և նախապատիւք քան զայլսն համարեալք։ — Իսկ ամենայն որ արտաքոյ ազատական տանցս՝ ժողովուրդն շինարնակ՝ հպատակք համարէին թագաւորին կամ պարոնայցն՝ (յորոց միճակս և բնակէին), և ոչ ունէին իրաւունս մտանել 'ի Վերին ատեանն, բայց եթէ յազնուութիւն կամ 'ի պաշտամունս վերառեալ. ամենայն պէտք նոցին քաղաքականք և խնդիրք՝ քննէին և սահմանէին 'ի Ստորին կամ 'ի փոքր Ատենի (Basse Cour), որոյ անդամք՝ 'ի նոցանէ ընտրեալք լինէին, և ըստ փռանկ բարբառոյ՝ կոչէին Բուրժէսք (Bourgeois). զայս դաս հա-




ԼԵՒՈՆ Գ.

Յատեան Դատաստանի.

*ըստ նկարուց ՊԻԾԱԿ ՍԱՐԳՍԻ, յամի 1331.*

մարիմ ուրեք ուրեք փոքր մարդիկ կոչեցեալ յարքունի պատմչէն. իսկ անմիջական երկրագործք և բնակք կալուածոց պարոնայցն՝ ըստ այնր ժամանակի օտարաց կոչման՝ Պառիկոս ('ի յունականէն առեալ, Πάροικοι, Paricus) անուանէին: Եւ 'ի հասարակի ամենայն՝ որոց չգոյր ինչ ընդ այլում կապակցութիւն ծառայութեամբ կամ ստացուածով՝ կոչէր Ռամիկ:

Գ. Ըստ նորոց օրինացս և հրահանգաց քաղաքավարութեան, և ըստ նորոց դրակցաց և խնամեաց արևմտեայց՝ յեղափոխեցան շատ կամ սակաւ՝ նախնի հայկական սովորոյթք, տարազք և պաշտամունք, և պատուոյ անուանքն. վասն որոց ասէր Լամբրոնեցին [1]. «Ամ » Հայս՝ որ զգեստուքն փռանկ է ձևացեալ ». և պարզագոյն ևս (որ և ճահագոյն մերոցս բանից), գրէր առ Լևոն, 'ի նա ինքն կրթելով գյանդիմանութիւն սորա՝ որ վասն իւրոց ինչ կարծեցեալ նորաձևութեանց. յոր՝ եթէ ոչ հաճիք, ասէ, ապա և դուք հետևող լեալ հնացեալ հայրենի սովորութեանց, «Մի կայք բացագլուխ՝ ըստ Լատի» նացւոցն իշխանացն և թագաւորացն. այլ դիք չարփուշ՝ » որպէս ձեր նախնիքն. աճեցուցէք զհերս և զմորուս՝ որ» պէս ձեր հարքն. զգեցիք դուռայ լայն և թաւ, և մի » փիլոն և զապեայ պատմուճանս. հեծէք 'ի սախտեալ ե» րիվարս ճուշանով, և ոչ յանապատս լատինս լեռնով. տուք » պատիւ անուանց՝ ամիրայ, և հեճուպ, և մարզպան, և » սպասալար, և այսպիսիս. և մի Սիր և Պրոքսիմոս, » Գունդստապլ և Մարաջախտ և Ջիւառր և Լիժ, որ Լա» տինացւոց է օրէն:... Ապա թէ իշխանութեանդ ձեր » ծանր է այսօր՝ զլատին ազգին՝ որ են Ֆռանկք, անսոր » և բարակ սովորութիւնն՝ թողուլ, և 'ի հնոց Հայաստա» նեայց թանձրութիւնն դառնալ, և ոչ հերս ժողովեք, և » ոչ մորուս երկայնացուցանեք, և ոչ զգեստս լայնացուցա» նեք, և մեզ ևս ծանրագոյն՝ զկատարեալ բարեկարգու» թիւնն որ 'ի նոցանէ օգտեցաք՝ 'ի փառս սուրբ եկեղե» ցւոյ, արհամարհել »: — Բանք Արքոյդ, մանաւանդ որ զզգեստուցն տարազոյ՝ նախ 'ի թագաւորն ինքն ակնարկեն, և ցուցանեն փոքր 'ի շատէ՝ զնորամուտ ձևսն. թէպէտ զպատուականագոյնն՝ որ է գլխոյ թագն՝ ոչ յիշէ. և էր այն ըստ Լատինացն՝ յորոց ընկալաւն, և ոչ շարփուշն (սէրփուշ, سرپوش) արևելեայց, որով և Բագրատունիքն յայտնին վարեալ, զոր ցուցանեն ցարդ քանդակք պատկերաց Սմբատայ և Գուրգենի կամ Դաւթի և Գուրգենի թագաւորաց՝ 'ի տաճարս Սանահնի և Հաղբատայ, և ոչ վսեմական և ազնուաձև քան զյոգունց ազգաց՝ հին հայկական Արշակունեացն կիդար, որպէս տեսանի 'ի դրամս Տիգրանեանցն և Արտաւազդաց: — փիլոնն՝ զոր և թագաւորօրհնէքդ ծանոյց՝ է արտաքին քղամիդն հռոմէական, արդարև նման ձևով աբեղայական փիլոնի, 'ի գոյն ծիրանի, վասն որոյ և յատկաբար Ծիրանի կոչի: Զապեայ պատմուճանն՝ է պարէգօտն նեղ, ըստ բիւզանդական կայսերաց տարազու, ըստ որոց և 'ի մեր ձեռագիրս նկարին, և յաճախ 'ի գոյն կապոյտ, պէսպէս ճամկօք և անկուածովք, որ մինչև 'ի ծունկս և անդր հասանէր [2]. 'ի սորա վերայ արկանէին զվակասն ընդելուզեալ ակամբք և ոսկի դրուագօք. և պնդէին զմէջս ականակուռ և ոսկէճարմանդ կամարաւ: Ստորին զգեստն՝ զոր թագաւորօրհնէքն չաղչեր կոչեաց, ոչ որպէս զնախնեաց լայն՝ այլ ըստ ձիաւորացն հալաւի նեղագոյն, իբրու բարձպան, զոր Մխիթար Գոշ կոչէ կարբաւպատ ձարմանդ, և յետին ընդօրինակողն 'ի ջաղջեր փոխէ: — Մահմեզ կանոնին՝ ցուցանէ զկօշիկս ոտիցն՝ մորթակաւորս, գէթ 'ի հեծանելն. սովորական ոտնապանք և կօշիկք կամ օդք՝ ծիրանեգոյն էին: Իսկ օրէնք հեծելութեանն և սարք երիվարին՝ ըստ ասպետաց ժամանակին, թեթև կազմած, և ոչ ծանր ըստ արևելեայց: — Զհերաց ամփոփումն և զմօրուաց կարճումն՝ ցուցանէ և պատկերդ կնքոյ Լևոնի, որպէս և այլոց թագաւորաց՝ որք 'ի ձեռագիրս նկարեալք երևին, որք մօրուաւորք են, այլ ոչ մեծամօրուք: — Նշանակք թագաւորութեան՝ որպէս 'ի ձեռնադրութեանն տեսաք, էին Դրօշն կամ Նշան՝ առիւծ-պատկեր, Գունդն ոսկի և Գաւազանն շուշանածայր (Fleur de Lis) [3]: —

Ըստ այսոցիկ է իմանալ, զանազանեալ գունով և զարդուք, և զզգեստս պարոնայց և ազնուաց, քաւ 'ի թագէն և 'ի վակասէ. զայսպիսիս կրէր և թագուհին՝ սակաւ ինչ զանազանութեամբ յարքայականացն, զրեաթէ և պատմուճանն արտաքին՝ նման նորայումն էր: — Զտարազ զգեստուց թագաւորին, այլ և զժողովրդականաց՝ ցուցցէ մեզ պատկեր նկարէն (կրկին մեծութեամբ բնագրին, 'ի ծանօթ նկարչէ՝ Պիծակ Սարգսէ, որոյ էր և պատկեր աւետարանին Դրազարկի). յորում՝ թերևս պատուականագոյն քան զզգեստուցն՝ գրելի է մեզ ցուցակութիւն կերպարանաց Լևոնի Դ, որդւոյն Օշնի, որ աներկբայօրէն իսկական կենդանագիր է թագաւորին [4], նկարեալ յամի 1331, յորժամ էր նա ամաց քսան և երկուց կամ երից:

Աւելորդ է ասել զի յարքունիսն և արտաքոյ՝ զամենայն օրէնս և հրահանգս թագաւորականս՝ ըստ կայսերական պալատան Բիւզանդիոնի և ըստ արևմտեան արքունեաց ժամանակին յարմարեաց Լևոն. կոչելով զինքն յասկեղէն կնիքսն և 'ի դրամս, որպէս տեսաք (յէջս 380, 435),

## ԼԵՒՈՆ կամ ԼԵՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ — ԿԱՐՈՂՈՒԹԵԱՄԲՆ ԱՍՏՈՒԾՈՑ

Որպիսի և է կնքաւոր թուղթ թագաւորին՝ Սիգել կոչի 'ի մերոցս. և նշանակէ կնիք՝ ըստ լատին բառի (Sigillum): Ի լատին հրովարտակս և 'ի թուղթս, քանզի չունիմք հայերէն բնագիրս, յորժամ առ օտարս էին ուղղեալք՝ գրէր, «Լևոն շնորհօքն Աստուծոյ թագաւոր Հայոց, որդի » Ստեփաննի, 'ի հզօր ազգէ Ռուբինեանց ». (այսպէս առ

[1] Ի Մեկնութեան Պատարագի:

[2] Այս պատմուճան թուի յունական բառիւ աւանդեալն յՕրինագիրս՝ տարաւալոտին, իբր եղեգնեայ կամ գաւազանաձև ?, զոր և թարգմանէ գրիչն՝ Ոսկեհուռ խազոյ:

[3] Վահրամ 'ի Վիպասանութեանն այսպէս տողէ զնշանականս.

«Զձեթում արքայ Հայոց օծեալ,
Ոսկի թագիւ զնա պսակեալ,
Եւ [illegible] օծեալ
Ի [illegible] ոսկի ընդելուզեալ»:

[4] Մաշուած մագաղաթին ոչ ներկեաց ամենեւին ճշգրտել զդէմսն:

րաց մերոց և վերագրեալք առ Թագաւորս մեր, հնչէին և 'ի տաճարս ամենաթագաւորին Աստուծոյ, 'ի ժամ մեծի խորհրդոյ պատարագին, 'ի կարգի գոհաբանական յիշատակացն, որպէս ընթեռնումք 'ի Պատարագամատոյցս գրեալս յաւուրս պայազատութեան նոցին. զոր օրինակ. «Եւ վասն զօրութեան և յաղթութեան 'ի Քրիս- » տոս Աստուած հաւատարիմ Թագաւորին մերոյ Ա. Ա. » և ամենայն Թագաւորաց քրիստոնէից..: Եւս առաւել » վասն հանգուցեալ Թագաւորացն մերոց, Հեթմոյ և » Լեւոնեանցն, և Թագուհեացն նոցին՝ Զապելի և Կեռա- » նի, և արեամբ նահատակացն՝ Թորոսեանց, և Պարոնին » Կոստանդեայ, և որդւոց իւրոց և նախնեաց նոցին Ռու- » բինեանց: Ազատութիւն եղբարց մերոց», և այլն:

Դ. Եթէ վսեմական կոչումն, Թագն և գաւազան՝ ակն յանդիման տեսողացն վկայք էին արքայական աւագութեան Լեւոնի, յայտնագոյն և տեւողագոյն, նաև լրումն ինքնիշխանութեան նորին՝ ունիմք և մեք վկայութիւն զԴրամն, զոր տիրաբար եհատ այնուհետև և ընդունելի արար՝ ոչ միայն իւրոց հպատակաց, այլ և յոգունց օտարաց, ընդ մեծ մասն Փոքր Ասիոյ, Ասորւոց երկրի, յԵգիպտոս և 'ի Կիպրոս, և անդրագոյն ևս: — Ցուցաք 'ի տեղագրութեան Այասայ՝ զի թէ չիցէ անհաւան՝ այլ և ոչ քաջ յայտնեալ կամ գտեալ դրամ՝ յանուն նախնեաց իւրոց Ռուբինեանց, որոց չափ ազատութեան 'ի վեհագոյն իշխողէ՝ չէր քաջ հաստատեալ. իսկ Լեւոնի յետ թօթափելոյ և զառաւերական լծութիւն Անտիոքայ իշխանութեանն, չգոյր ինչ ակնառութիւն առ հրատարակել դրամ յիւր անուն, որպէս առնէին և յոլովք յարևմտեայ իշխողաց երկրին Ասորւոց. ապա և յառաջ քան զԹագաւորելն մարթ էր՝ և է իսկ Լեւոնի հատեալ դրամ, որոյ առհաւատչեայ է սակաւագիւտ այս պղնձի, զոր և 'ի



218. Դրամ Լեւոնի, յառաջ քան զԹագաւորելն.

դէպ է նախափորձ իմն համարել ապագայիցն արքունականաց: Որպէս նշմարի՝ յերկոսին դէմս դրամոյն բաժանեալ է գրուածն, Լեւոն Ժառանգ – Որդի Ստեփանէի. յորում նկատելի է և կարևոր կամ պարծանս իմն համարել նորա զյիշատակ անուան հօրն, իբրև քաջածանօթի և արժանաւորի առն. զնոյն վերագրեալ տեսանեմք և 'ի պարգևագիրս իւր, յ' ամէ 1201 ցամն 1212. Leo, Dei gratia Rex Armeniorum, *Filius Stephani*, յաւելեալ և զզարմն 'ի հզօր ազգէն Ռուբինեանց, Et de *potenti* genere Rupinorum, կամ առաւել ևս, de *potenti* et *magnifico* genere, հզօր և պայծառ կամ մեծափառ. ոչ գիտեմ այսուքիկ թէ այլազգ ինչ էին մակդիրքն 'ի հայ բնագրին, որ արդ ոչ գտանի. այլ զի և յաջորդք Լեւոնի նոյնպէս գրէին, և յետ հարիւր և երեսուն ևս ամաց (1331) Թոռն Թոռին իւրոյ՝ Լեւոն Դ գրէր զինքն (թէ և 'ի մօրէ), «Կարող և բարձր 'ի պայծառ և բարի արմա- » տոյն Ռուբինեանց». և զայս կամ զայսպիսիս թարգմանաբար գրէին նոցա և արևմտեայ պետք թղթակիցք. որպէս առանձինն սահմանեալ և գրեալ կան 'ի հին դիւանս Վենետաց՝ վերնագրութիւնք թղթոց առաքելեաց առ Թագաւորն Հայոց և առ արքայազունս և մեծամեծ իշխանս. և առաջնոյն ընծայի յոյժ մեծաձայն իմն կոչումն, De *Altitonanti* genere Rupinorum, Armenie Rex, որ ըստ բառին նշանակէ բարձրորոտ, կամելով արդեօք ասել հռչակաւոր և կամ նման սմին բան: — Վասն այլ ինչ գիտելեաց զպէսպէս դրամոց Լեւոնի՝ յիշեսցեն ընթերցողք զոր ինչ աւանդեցաք և պատկերօք ցուցաք 'ի դրուագի Բաժտանն Այասայ. այլ զի 'ի տախտակի անդ գծաձև միայն կարգեալ է, աստանօր յանդիման լիցի և համազոյն իսկականին, փորեղ կամ ստուար ոսկի դրամ, որ կշռէ աւելի քան զ'7 $^1/_{10}$ դրամ, որ է առաւել քան



219. Ոսկի դրամ Լեւոնի.

զկրկին հռչակաւոր վենետկեան տուկատի. (տես յէջ 379): Գերագոյն իմն ևս՝ և յաղթականապէս արարեալ է Լեւոնի, հատանել դրամ լատինագիր, գրաւական նուաճմանն Անտիոքայ, որպէս տեսցի 'ի մօտոյ՝ 'ի կարգի պատմութեան այնր խնդրոյ:

Ե. Ի պատուոյ անուանս աւագ որերոյ յիշեալս 'ի Լամբրունեցւոյն՝ հասարակեալ է Պարոնն, 'ի Լատինաց առեալ անդէն 'ի մուտս նոցին յարևելս. գտանեմք, թէ և ոչ յաճախ, նաև զմակդիրն Սիր, ստորին քան զպարոնն. այլ թէ որպէս կոչէին զփոքր մարդիկն՝ ըստ պատուոյ անուան, ոչ գիտեմ, զի բաց յերկուց այտի՝ ոչ գտանի 'ի պատմութեան. իսկ այլք վերոյիշեալք ոչ լոկ անձանց՝ այլ պաշտօնէից են պատուանունք. զորոց կայ մեզ մի առ մի ճառել համառօտիւ:

Նախապատիւ հանուրց պաշտօնէից և Պարոնայց արքունեաց Սիսուանայ, որպէս և արժանն պահանջէր, լինէր Պայլն, (Bayulus, Bailli, Bailo), 'ի ժամանակի պարապոյ արքունի աթոռոյ, կամ անտիական հասակի Թագաւորին, որ և Թագաւորապահայր կոչէր երբեմն. և էր ընդհանուր յանձանձիչ և վարիչ տէրութեան, իբրև երեսփոխան [1] Թագաւորին կամ դաստիարակ նորին. վասն

» գաւիթս Աստուծոյ, հանգիստական հաւաքմամբ 'ի կողմանէ վեհին » նախակարգեալ 'ի Թագաւորական պատիւ ճոխութեան, բարեպաշտ և աստուածասէր Թագաւոր »:

[1] Այսպէս իսկ կոչի յԱսիզն Անտիոքայ, ըստ թարգմանութեան կամ բացատրութեան երկատիրողին, այսինքն է Սմբատայ գունդստապլի, (ծէ.). «Առ Պարոնն կամ իր երեսփոխանն՝ որ է Պայլն»:

որոյ և կառավարիչ անուանի երբեմն (Gubernator). և ըստ այսմ երևին և առ լիաճասակ Թագաւորօք կացեալ Պայլք, որպէս յիշէ և մերս Լեւոն, յամի 1214 'ի Պարգեւագրին առ Ճիւրընկալս, և ոչ մի՝ այլ յոգնակի, (meorum Bajulorum). և յայտնապէս 'ի մահուանն՝ Պայլ և խնամակալ ժառանգի իւրում՝ դեռաբոյս դստերն Զապելի՝ կարգեաց զՍիր Ադան, զնախապատուն պարոնայց իւրոց, և երկրորդ՝ զգունդստապլն Կոստանդին զիւր քեռւոյ որդին, որ և յետ վաղաժամ սպանման Ադանայ՝ եղև առաջին Պայլ, և յառկազոյն եղև Նմա այս կոչումն քան զայլս. մանաւանդ զի ոչ միայն Զապելի՝ այլ յետ ամաց ինչ Պայլ եղև և փեսայացելոյն Նմա՝ որդւոյ իւրում Հեթմոյ, և 'ի տղայութեանն և յետոյ: Բայց սոյն ինքն Կոստանդին յետ Թագաւորեցուցանելոյ զՀեթում՝ 'ի բաժանել զիշխանութիւնն ընդ որդիս իւր, զչորրորդն՝ զՕշին՝ անուանեաց Պայլ, յայտ է թէ ոչ իբրև դաստիարակ եղբօրն, այլ իբրև հազարապետ տէրութեան, և ինքն կոչէր Թագաւորահայր և Աւագ Պարոն. և թէպէտ պաշտամունքն չէին ժառանգականք, այլ տեսանեմք զարմին Օշնի սեփականեալ զպայլութիւն՝ ցդար մի ողջոյն [1], հազարապետութեան տեսչութեամբ, և ոչ իբրու խնամակալ Թագաւորի. քանզի 'ի Նմին ժամանակի կային այլք այսպիսիք. որպէս Պայլքն Դ Լեւոնի՝ Հեթում Ճամբայլայն և Հեթում սեննեշալն, զորս և Պայլերն կոչէ յամի 1321՝ Պռոքսիմոն Պետրոս, գրելով 'ի Ներքոյ ստորագրութեան Նոցին որ 'ի դիմաց Թագաւորին: Զպաշտօն կամ զիշխանութիւն Պայլի՝ Թուի Թարգմանօրէն իմն յարմարմամբ հին անուանց, կոչել Եւսեբեայ Նշեցւոյ՝ (զՕշին) 'ի Թղթին, «Պայլ եւ Մարզպան ամենայն Հայոց». որպէս և զՀեթում Պատմիչ՝ «Գունդ (կոմս) և Կողմնակալ Սովրիոյ» (Իսաւրիոյ), այլ յաւէտ՝ առատութեամբ քան ճշդութեամբ երևին այսպիսի ասացուածք: Ցիշէ 'ի պատմութեան՝ տոհմն Պայլոնց, հաւանօրէն սերեալ յՕշնէ՝ որդւոյ Թագաւորահօրն:

Երկրորդ ըստ պատուոյ, այլ ոչ ըստ զօրութեան՝ երևի Իշխանաց Իշխանն կամ Իշխան Թագաւորութեան, որպէս կոչեաց արքայահայրն Կոստանդին զերրորդ որդի իւր զԼեւոն. 'ի դէպ էր կոչել և Պարոնայց Պարոն, զի Նոյն տեսակ զերկոսին կոչմունս, մին Նոր, միւս ըստ հին Հայոց. ըստ որոց՝ 'ի դէպ էր ևս կոչել Տերանց տէր, որպէս և կանանցն Տիկնաց տիկին. և այսպէս իսկ կոչեցեալ և Նշանակեալ գտանեմք յարքունի Ցայսմաւուրս՝ զմայրն Կեռ-Ան Թագուհւոյ (կնոջ Բ Լեւոնի), որ էր դուստր Կոստանդնի՝ եղբօրորդւոյ Ս. Լամբրոնեցւոյն. սորա մակդիր ոչ գտանի 'ի հայումս, այլ խորագիր փռանկ պարգեւագրի Նորուն, (որ կորուսեալ է), պահէ զնշանակ Թագադիր լինելոյ, քանզի ստորագրեալ վկայի Meteor de la Couronne des Ermines. որ կամ ուրոյն պատիւ ինչ էր և կամ Նոյն ընդ իշխանաց իշխանի: Զատ յերկուց աստի (Լեւոն և Կոստանդին) ոչ գտի զայլ ոք կոչեցեալ Իշխանաց իշխան կամ Թագադիր, և ոչ այլ Տիկնաց տիկին. գուցէ թէ և մարք Թագուհեաց այսպէս կոչէին:

Ց'իրական և 'ի մշտակայ պաշտօնեայս՝ Նախադասի յարքունիս Սիսուանայ, որպէս և 'ի փռանկացն, Գունդստապլն, որ է ընդհանուր Սպարապետ, որպէս և կոչի իսկ ուրեք, և կոչէ զինքն՝ յառկապէս կոչեցեալն գունդստապլ (ցամս 50) Սմբատ՝ որդի Կոստանդնի արքայահօրբառն լատին (Comes Stabuli) և փռանկացեալն յայնմանէ (Connétable, զոր և Ցոյնք յեղեալ են յիւրեանց բարբառ Κονταστaῦλος), յառկապէս Ախոռապետ Նշանակէ, իբրու զի յաւէտ Հեծելոց զօրականին առաջնորդէր, վասն որոյ և կոչելի Հեծելապետ. վայելուչ էր այսպէս լինել ըստ հին հայկական պարծանաց, որոց հռչակեալ էին հեծեալք և երիվարք: — Ըստ աւատական օրինաց՝ Թագաւորն էր Նախագլուխ և առաջնորդ բանակին. իսկ ուր Նա ոչ՝ Գունդստապլն լինէր միագլխապետ և կարգաւորիչ ամենայնի, և կրէր զնշան Թագաւորին, որ էր Ահիւծ կանգուն: Իսկ Լեւոն կրէր և զնշան Ս. Պետրոսի՝ զընկալեալն 'ի Քահանայապետէն՝ յերթալն ընդդէմ այլազգեաց: — Առաջին Գունդստապլ յիշատակեալ՝ է Պաղտինն այն՝ որ մեռաւ յամի 1188, յարշաւելն յառումն Պռականայ. յետ Նորա (1207) Ապլղարիպ Տէր Կռւտաֆոյ, ապա Պայլն Կոստանդին (1210—26) հայր Հեթմոյ Թագաւորի և Սմբատայ՝ որ յաջորդեաց զհայրն (1226—1276), և սմա՝ որդի իւր Լեւոն. յետ Նորա Թուի յայլ տուն փոխանցեալ պաշտամանն [2]:

Ըստ ձեռանէ Գունդստապլին և երկրորդ Նորին 'ի զինուորութեան՝ էր Մարաջախտն, (Marescalcus ըստ Լատինաց Միջին դարուց, Maréchal փռանկաց), որ ըստ բառական Նշանակին չէ հեռի յախոռապետէ. և ընդ

1 Պայլք յիշատակեալք 'ի պատմութեան.
1214-20 Սիր Ադան.
1219 Կոստանդին Թագաւորահայր.
1226 Օշին որդի Կոստանդնի.
1277 Գրիգոր որդի Օշնի.
1287-304 Հեթում (Պատմիչ), եղբայր Գրիգորի.
1304-7 Հեթում Բ.
1307 † 29 Օշին, որդի Հեթմոյ Պատմչի.
1331 Վասիլ, Արքայահայր կոչեցեալ.
1335 † 7 Պաղտին մարաջախտ:
Թերեւս Ա. Օշնի պայլ Թոռն է Սէր Օշին Պայլոյ † [illegible] յարշաւանս Ղազան ղանի, որ է յամս 1299-1301. և որոյ յիշին որդիք Թորոս և Վասակ, և երեք դստերք:

2 Ցիշատակեալ (Գունդստապլ) Սպարապետք.
† 1188 Պաղտին.
1207 Ապլղարիպ.
1210-26 Կոստանդին Պայլ.
1226-76 Սմբատ, որդի Կոստանդնի.
1276 Լեւոն, որդի Սմբատայ.
1279 Օշին եղբայր Լեւոնի, որ և Մենեսկալ.
1283 Լեւոն.
1294-305 Հեթում, Տէր Կոռիկոսոյ (Պատմիչն).
1307 Օշին Տէր Կանչոյ.
1308 † 29 Կոստանդին, որդի Հեթմոյ Պատմչի.
1330-42 Ճուան Լուզինեան, հայր վերջին (Ե) Լեւոնի.
1360 Հեթում:
Գունդստապլի վերնագիր այսպիսի ընծայեալ է. «Տէառն Աստուծոյ և տիրոջ ծառայից նորին, ամենազօր և ամենախնամ 'ի զօրեղ փրկչէն մերմէ Յիսուսէ՝ անվանեալ զօրութեամբ արիացեալ, քաջամարտիկ զինուոր և արեգոյն Սպարապետ տանն Հայոց, բարեպաշտ և քրիստոսասէր իշխանաց իշխան, Գունդստապլ» Ա. Ա.:

նմին տնտեսէր զպէտս և զկարգ բանակին, և զդրօշն կամ զմեծ նշանն պատերազմին կրէր. իսկ եթէ թագաւորն ինքնին ելանէր ընդ զօրուն՝ գունդստապլին անկ էր նշանակրութիւնն, և մարաջախտին՝ զգունդստապլին կրել նշան, որպէս տեսաք 'ի Թագաւորօրհնէքն: Առաջին մարաջախտ Հայոց՝ յիշի յաւուրս Թագընկալութեան Լեւոնի՝ Վասիլ՝ տէր Վաներոյ, ոչ գիտեմ յորմէ՞ տոհմէ, և վերջին ծանօթ՝ Պաղտին, հայրն Բ Կոստանդնի Թագաւորի: — Ցետ սոցա գլխաւոր 'ի զինուորական դասու յայտնի ուրեք հայերէն կամ հին պարսիկ ձևով՝ Սպասալար, և նշանակէ զհեծելապետն. ցուցաւ սպաս նորա 'ի հանդիսի Թագաւորութեան: Ի պատմութեան՝ յանուանէ յիշի յամի 1260 Լեւոն Սպիտակեանց Ասպասալար առ Հեթմով Ա: Առ բազումս յարևմտեայց մարաջախտն վերագոյն էր քան զգունդստապլն յառաջնորդութեան զօրաբանակին [1]:

Վեհագոյն քան զմարաջախտն համարէր պատուով Սենեսչալն կամ Սենեսկալ (Siniscalcus, Sénéchal), որ թարգմանի ըստ հին փռանկ բառի՝ Սեղանադիր, և էր վերակացու կամ հոգաբարձու արքունի տանն, տնտեսող ելից և մտից և ամենայն ընչից նորին, հաւատարիմ տան նորա, ըստ գրոց, կամ Հազարապետ քան եթէ տաճարապետ: Առ Լեւոնիւ Մեծաւ՝ այսպիսի համարէր Սիր Ատան, որ և Պայլ կարգեցաւ դստեր նորին և ժառանգի: Սակաւք 'ի յաջորդացն ծանօթք են 'ի պատմութեան. և 'ի բովանդակ Թագաւորութեան Հեթմոյ ոչ ոք յիշի. գուցէ եղբայր նորա Լիկոս կարգեալ էր յայդ, զի ոչ նշանակի սմա պաշտօն 'ի պատմութեան [2]: — Որպէս Մարաջախտն՝ Գունդստապլին, այսպէս և ընդ ձեռամբ Սենեսկալին էր չորրորդն յաւագ պաշտօնէից հոգաբարձուաց պետութեանն, այն է Ջամբռլայն (Ciambellanus, Chambellan), որ է Սենեկապետ, կամ Հանդերձապետ արքունի, իբրև Զգեցուցանող Թագաւորին Արշակունեաց, կամ Պռոտովեստիարն Բիւզանդացւոց (Πρωτοβεστιάριος, Protovestiarius), պահապան նշանաց և ըզգեստուց նորին, յօրինիչ հանդիսից, համարակալ գանձուն, և այլն, գուցէ և տեսուչ և քննիչ աշխարհապահ ամրոցաց, որպէս էին սենեսկալք այլոց պետութեանց փռանկաց յարևելս: Սակաւք ոմանք յիշին և յայսմ պաշտաման, որոց առաջին առ Լեւոնիւ օտարազգին Օլիվիէր [3]:

Ցետ չորեցուն աւագ պաշտօնէիցս՝ գլխաւոր հանդիսանայ Ջանցլերն (Cancellarius, Chancelier), այսինքն Ատենադպիր կամ Քարտուղար արքունի. որ յաւէտ յեկեղեցական կարգէ ընտրէր, յորում յայտ է թէ գիտնագոյնքն գտանէին 'ի գրութիւն և 'ի շարագրութիւն բանից և 'ի թարգմանութիւնս լեզուաց. որոց առաջին և նախածանօթ է մեզ Յովհաննէս արքեպիսկոպոս Սսոյ (յետոյ կաթողիկոս). և զի այսպիսի մեծի արքայական քաղաքի հոգևոր վերատեսուչն էր պաշտօնեայն, ապա և մեծապատիւ էր քան զյոգունս 'ի պաշտօնէից, այլ ոչ մեծազօր. և գործ էր նորա գրել և ստորագրել արքունի հրովարտակաց, կրելով և պահելով զկնիք Թագաւորի. և ըստ աստիճանին՝ դատողական ևս վարելով տեսչութիւն, յառանձին կարևոր դէպս [4]. — Յայտ է թէ ընդ ձեռամբ մեծի ատենադպրին էին և այլ արքունի Գրագիրք, որպէս և յիշին ուրեք 'ի գիրս [5]. դարձեալ և Թարգմանք և գրիչք այլ և այլ լեզուաց, որպէս լատինականի, յունի, փռանկի և արաբացւոյ. առաջնոյն՝ առ Լեւոնիւ յանուանէ յիշի Բաւոն (Bavon կամ Bovon), որ և ընդ Հեթմոյ-Հեղեայ դեսպան առաքեցաւ առ կայսր Ալամանաց և առ Քահանայապետն Հռովմայ (1211):

1 Մարաջախտք Սիսուանայ.
1198-1214 Վասիլ, Տէր Վաներոյ.
1213-1226 Վահրամ Կոռիկոսեցի.
1226 † 1258 Լեւոն, որդի Կոստանդնի Պայլի.
1260 Լեւոն Սպիտակեանց Ասպասալար.
1277 † 95 Օշին, որդի Կոստանդնի Լամբրոնեցւոյ.
. . . . Թորոս, Տէր Սիմանակլայի.
1307-16 Սմբատ, Տէր Պինակին.
1329 † 37 Պաղտին, Տէր Նղրոյ.
Անուամբ միայն
1387 Յովհան de Tabarie ('ի Կիպրոս).
1397 Յովհան de Brie *.
1440 Ա. Ա. յիշի 'ի Կիպրոս:
1459-63 Փեբոս, հարձորդի Յանոս թագաւորի Կիպրոսի:

2 Սենեսկալք Սիսուանայ.
1210-19 Սիր Ատան.
1277 † 1307 Օշին, որդի Սմբատայ Գունդստապլի.
1307-16 Ռեյմունդ, Տէր Միքայէլկլայի.
1321-31? Հեթում.
1391 Ֆրանչիսկոս Myre.

3 Ջամբռլայք
1202 Սիր Ոլիվեր.
1218 Ճօսլին.
1288 Պետրոս.
1307 Թորոս.
1308-23 Հեթում Տէր Նղրի.
1386 Յովհան Myre.
1395 Յովհան Babin.

4 Ջանցլերք (Ատենադպիրք).
1200-3 Յովհաննէս արքեպիսկոպոս Սսոյ.
1207 Վասիլ.
1236 Մանուէլ.
1245 Գրիգոր երէց.
? Անդրէաս.
1264 Թորոս արքեպիսկոպոս.
1288 Հեթում.
1307 Գրիգոր.
1321 Տէր Կոստանդին արքեպիսկոպոս Դրազարկի.
1331 Վասիլ.
1333 Յովհաննէս Երիցանց.
1335-45 Վասիլ:
Առ Բ Լեւոնիւ փռանկ լեզուի Քարտուղարք յիշին՝ յամի
1271 Ճոֆրէ (Joffroy l' Escrivain).
1274 Կիյյոմ (Guillaume le Velu):

5 Յիշէ ոմն ըստ միոջէ զայսոսիկ Գրագիրս.
Գրիգոր դպիր.
Վասիլ դպիր.
Հեթում երէց.
Կոստանդին Շարահիշանց.
Սարգիս երէց քեռորդի Ստեփաննոսի Վահկացւոյ:

* Commemoriali IX. N. 71. — ԴԻՒԱՆՔ ՎԵՆԵՏԿՈՅ:

Ի կանոնի Թագաւորօրհնէից ընթերցաք 'ի պաշտօնէայս տանն արքայի և զՊօղլէր, (Butellarius կամ Buticularius, Boutillier), որ է Մատռուակ, կամ լաւ ևս Գինեպետ, և տնտես սեղանոյ արքայի. որոյ իշխանութիւն կամ պաշտօն ոչ ձգի արտաքս, այլ զի զօրըստօրեայ պարէն թագաւորի հոգայ՝ մեծ և զգուշաւոր պաշտօն համարեալ է։ — Ի նմին կանոնի յիշեցաւ և Աւագ Զայուշ որ նշանակէ զՆուիրակապետ կամ Սուրհանդակապետ. յայտ է 'ի կոչմանէն՝ 'ի Թուրքաց ներամուծեալ պաշտամանս, նաև յարքունիս կայսերաց Բիւզանդիոնի նոյնպէս կոչելով, Ο' μέγας Τζαούσιος. առ որս՝ հրամանատար էր սա երկաթարիր և սակրակիր սպասաւորաց, և 'ի ձախմէ գօտւոյն կրէր փքին կամ աշտեայ, և էր ինքն ընդ ձեռամբ Պախիկուրին, որ է հազարապետ պալատանն։

Պռոքսիմոս՝(Proximus) յիշեալ 'ի Ն. Լամբրունեցւոյ՝ ոչ է ստուգապէս համազօր պաշտօնէի՝ որ այդու անուամբ կայր 'ի դրան կայսեր, այլ Համարակալ և ոստիկան եկի և մտի առ մերս։ Առ Լեւոնիւ, յամի 1214, յիշի աղուաղեալ անուամբ 'ի լատին պատճէնի ուրեք՝ Պռոքսիմոս ոմն. բայց յետ Լեւոնի 'ի բարգաւաճել Այասու մեծի ծովային չահաստանի՝ ստէպ յիշի Պռոքսիմոսն [1]. և ընդ իշխանութեամբ նորին՝ Գլխաւորն Բաժտան Այասու և այլ ստորակարգ պաշտօնեայք, յորոց մի և Դըպրապետ մաքսատանն, 'ի լատին պատճէնի՝ յամի 1310՝ կոչեցեալ Protonotarius Duanæ Secretorum (Նոտարապետ գաղտնեաց կամ Դիւանաց մաքսին) [2]։ — Գըլխաւորք կոչէին և վերակացուք ծովաբերդից և նաւահանգստից, որք և Մինապան՝ արաբախառն բառիւ, և փռանկ բառիւ Capitaine [3], կամ ըստ Լատինաց՝ Capitaneus. այսպէս կոչի և ատենապետն կամ մեծ Դատաւորն արքունի, Capitaneus Curiæ Regis։ Իսկ այլ ստորակարգ պաշտօնեայք այսր ատենի՝ ոչ են ծանօթք, որպէս և ոչ այլոց ատենից։ — Ատեանքն՝ մանաւանդ արքունին կամ Վերինն՝ Դարպաս կոչէին։ ՅԱսիզս (Գլ. ԺԵ.) գլխաւոր Դարպասուն՝ Տուկ (Դուքս) կոչի, ատենապետն՝ Տիվանն պաշի, թուրք բառիւ, և որք ընդ ձեռամբ սորա՝ Տիւանցիք, այսինքն Դիւանականք։ Յիշին և Երդուած մարդիկն (Jury, Giurati), և Նօտարնի (Notaires)։

Նշանաւորք քան զամենայն դասս մարդկան 'ի հարըստութեան Սիսուանեայցս, և հաղորդք քաղաքական և յաւէտ զինուորական պատուոյ, այլ և մասնակիցք եկեղեցականին, էին Ձիաւորք, ոչ սոսկ հեծեալք, այլ աւատական հրահանգօք կարգեալ Ասպետք, ըստ հին հայկական կամ պարսիկ կոչման, այլ յայսմ ժամանակի Ձիաւորք առձայնեալք. որպէս առ արեւմտեայսն՝ նոյնպէս և առ մերքս յոյժ կարեւորք և անհրաժեշտ համարեալք՝ 'ի պահպանութիւն և 'ի պարծանս պետութեան. որպէս զի հարկ էր ամենայն պայազատաց թագաւորաց և պարոնայց՝ Ձիաւորս լինել, և ընդունել 'ի պայմանեալ հասակի տիոց՝ մեծաւ հանդիսիւ՝ զատուիճանն զայն, յիւրաքանչիւր Վեհից, որոց՝ լիծ ձիաւոր կոչէին։ Այսպէս և իշխանապետք մեր զառաջինն՝ յԱնտիոքայ Բրնձէն ընդունէին զասպետութիւն, կալով ժամանակ ինչ առ նմա՝ ըստ հրահանգաց օրինի։ Իսկ յորժամ Լեւոն՝ գերի վարեալ զԲրինձն Պեմունդ՝ թօթափեաց զլծութիւնն, և թագաւոր ևս եղև, այնուհետև ինքն և յաջորդք իւր տային զկարգն՝ որդւոց իւրեանց և այլոց լիծ ձորտից. ընդ որս յիշի և Անտիոքացւոցն և այլ փռանկ իշխանորդւոց ոմանց՝ 'ի Հեթմոյ առնուլ զձիաւորութեանն կարգ, թէ և ոչ հպատակք նմին։ — Վասն պատշաճ տիոց ձիաւորութեան՝ Ասիզն ասէ, « Ըղորդ հասակն (լիծին) տասնու-
» հինգ տարին է, և ձիաւորութիւնն. զի առանց ձիաւո-
» րութեանն՝ չկայ հասակ ». այլուր նշանակի չորեքտասան ամ տիոց։ Այլ 'ի պատմութեան մերում յիշին ոմանց արքայորդւոց և ազնուազարմից ձիաւորութիւնք՝ վաղ կամ անագան քան զայդ հասակ. զոր օրինակ, Հեթում Ա ձիաւորեցոյց յամի 1259 զերկրորդ որդի իւր՝ զԹորոս, որ անցեալ թուի յայնժամ զհնգետասանամենիւք. իսկ անդրանիկ նորին և յաջորդ Լեւոն Բ՝ զերկոսին երէց որդիս իւր՝ զՀեթում (Բ) և զԹորոս՝ միանգամայն ձիաւորեցոյց յամի 1284, յաւուր մեծի տօնի Աստուածայայտնութեան, յորոց առաջինն ութևտասանամեայ էր, երկրորդն հազիւ թէ չորեքտասանամեայ. ընդ որս « և այլ մանկունք իշխանաց և որք յարքունական
» սպասաւորացն ». յորում հանդիսի ներկայ գոլով Յովհաննու Երզնկացւոյ՝ խօսեցաւ երկար ճառ, 'ի բանն « Ամենայն անձն որ ընդ իշխանութեամբ է », և այլն։ — Յետ թագաւորական օծման և պատերազմական յաղթանակաց՝ մեծագոյն քաղաքական հանդէս՝ ձիաւորութեանն էր. և որպէս եցոյց ճառախօսն՝ սովորաբար ընդ արքունի պայազատաց՝ սպասէին և այլք յազատաց՝ ձիաւորել զորդիս իւրեանց։ Մարթ է փոքր 'ի շատէ զարտաքին հանդէսն գուշակել, այլ մեզ ցանկալի էր գտանել և զգրաւոր կարգ կամ կանոն ձիաւորութեանն, և եթէ օրէն իցէ ասել՝ զձեռնադրութեանն, որպէս զթագաւորին. զի հարկ է ամենայնիւ՝ թէ չարագրեալ կամ թարգմանեալ էր և այս օրհնութիւն 'ի հայումս. այլ ցարդ ոչ հանդիպեցաք։ — Կարեւորագոյն ևս էր գիտելն՝ թէ յինչ անուն և ձև կոչէին Ձիաւորքս Հայոց. ըստ միոյ յերից այնր ժամանակի հռչակեալ կարգացն (Հիւանդանոցին, Տաճարականաց և Տեւտոնաց), եթէ մանաւանդ այլ ինչ օրինակ յարմարեալ, որպէս 'ի դէպ է կարծել. ընդ սմին և հաւանել՝ թէ առ մերովս Լեւոնիւ հարկ էր ընդունելի լինել այսպիսւոյ կարգաւորութեան, առ որով թարգմանեցան և յերիւրեցան նախայիշեալ Թագաւորօրհնէքն և այլ կարգք և սահմանք հռոմէական եկեղեցւոյ և դար-

1 Ծանօթ Պռոքսիմոսք՝ յետ վերոյիշելոյ եղծանուանն, անագան ուրեմն յիշին,

1288 Օշին.
1307 Թորոս, Տէր Ծօփրիկլայի.
1314 Օշին Լճաւննեց.
1321 Պարոն Պետրոս։

2 Այասու բաժտան Գլխաւորք ծանուչին, յամս
1288 Պր. Բակուրան.
1321 Պր. Կոստանց։
Իսկ Դպրապետ տեղւոյն՝ էր յամի
1310 Բարդողիմէոս ոմն։

3 Յամին 1304 Գլխաւորք (Բերդապահք) Այասու՝ էին Սէր Լէօն և Կոլոֆոն. յամի 1314՝ Սէր Թորոս Միխայլինց։



*Venezia, Stab. Kirchmayr e Scozzi*

ԶԻՆՈՒՈՐ ՀԱՅ Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՍԻՍՈՒԱՆԱՑ

աւագասէր և ամենայարդար բարուց Լևոնի, և ըստ ծանօթութեան բիւզանդական պալատան (ուր և եկաց ժամանակ մի), այլ և արևմտեայցն՝ (Երուսաղեմին և Կիպրոսի), բազմաթիւ և բազմոդաս էին դրանիկքն և ճորտք արքունի։ — Վասն Հեթմոյ Ա. գրէ ոմն 'ի փռանկ հիւրոց նորին՝ հինգհարիւրիւ չափ պաշտօնէայս կամ սպասաւորս ունել յարքունիսն։ Նմին համեմատ իմանալի է և զտուն թագուհւոյն. որոյ՝ զատ յաւագ պաշտօնէից և 'ի նաժշտաց, այլ ոմն հիւր յարքունիս Լևոնի Բ, յամին 1283, աւելի քան զվաթսուն Նիրքինիս սպասաւորս ետես. նոյնպիսիս ունել ասէ և այլոց տիկնայց աւագաց. իսկ զբազմութիւն ներքինեացդ, ասէ, 'ի պատուհաս յանցանաց նոցին արարեալ։ Բայց յաւուրս Լևոնի թէ էին և թէ ոչ՝ 'ի պատմութեան նորին ոչ յիշին դոքա։

Այլ այսքան չատ լիցի առ այսօրիկ. դարձցուք և յայլ տեսչութիւնս Լևոնի։

Զ. Ի վայելչութիւն թագաւորական չքոյ և համօրէն աշխարհին հարկ էր և աղբերս հարստութեան հնարել. առ որ՝ մի 'ի գլխաւորաց էր դիւրել զել և զմուտ վաճառուց և վաճառականաց յերկիր իւր. և մեծ գործ մի եւս և պիտանի եղև նորա, որպէս յառաջ քան զթագաւորելն՝ առաւել եւս յետոյ, հաստատել պնդել դաշինս բարեկամութեան ընդ մերձաւոր և հեռաւոր պետութեանց քրիստոնէից, և ընդ վաճառական ընկերհաշտութեանցն. որոց գլխաւորացն (Վենետաց և Գենուացւոց), 'ի սկզբան երրորդի ամի թագաւորութեանն (1201) պարգևեաց հրովարտակօք ազատութիւն 'ի մաքսից, տեղիս կանգնելոյ տունս և եկեղեցիս, օրէնս և իրաւունս վասն դատից, ժառանգութեանց, նաւաբեկութեանց, և այլն, և այլն. զորոց՝ եթէ կամէաք մանրագոյնս քննել, յոյժ ընդերկարէր բանս. այլ գլխոնոցս, այսինքն է ըղդաշանց ընդ վաճառասէր ընկերութիւնս, (քանզի չափ և զօրութիւն մեծ էր անտի տէրութեան Լևոնի, որպէս և յաջորդացն եղև), ասելի է սակաւ ինչ, և զպայմանացն եդելոց կամ շնորհաց տուելոց առ նոսա 'ի Լևոնէ, զորս՝ գրեաթէ սակաւ փոփոխութեամբ կամ յաւելուածով՝ հաստատեցին յաջորդք իւր, մինչև ցկէս ԺԴ դարու. իսկ ինքն Լևոն յարմարեաց զպայմանսն՝ ըստ նախագունիցն քան զինքն հաստատելոց դաշանց՝ 'ի փռանկ պետութեանց Երուսաղեմի և երկրին Ասորւոց։

Փոքու իւք զանազանին դաշինքն կամ արտօնութիւնք Լևոնի որ առ Գենուացիս և առ Վենետիկեցիս, տուեալք առաջնոցն՝ յամսեան մարտի 1201 ամի, առ պատգամաւոր նոցին Օձերիոյ Տէ Բալլոյ կամ Բալլիոյ. երկրորդացս՝ 'ի դեկտեմբերի այնր ամի, առ պատգամաւորն Ցակոբ Պատոէր, 'ի դէմս հաշտակաւոր ծերունի դքսի նոցա Էնրիկոսի Տանտոլոյ, որ մի յականաւոր որերոյ ժամանակին էր, և յետ սակաւ ամաց՝ նուաճող Կ. Պօլսի 'ի Յունաց։ Երկոցուն եւս պետութեանց հպատակացն շնորհէ Լևոն, ա. Ազատ երթևեկ և բնակութիւն յերկրի իւրում. նոյնպէս և ազատօրէն բերել և տանել զինչս և վաճառս իւրեանց, առանց հարկի և բանաքարութեան. բայց զի, բ. Բնակք նոցա յայսկոյս ծովու՝ յանցանելն ընդ Դուռնն (Portella), հատուսցեն զիրաւն ըստ այլոց քրիստոնէից։ — գ. Եթէ բերցեն (Վենետք) ոսկի կամ արծաթ՝ առ 'ի դրամ հատանել, վճարեսցեն զսակն, որպէս և 'ի Պտղոմայիս տան, իսկ եթէ ոչ իցէ վասն դրամահատութեան՝ ազատ լիցին։ — դ. Ի նաւաբեկութեան՝ եթէ յիւրեանց և եթէ յօտարաց նաւս գտցին՝ առցեն զինչս իւրեանց. բայց ինչք օտարաց որ 'ի նաւս նոցին՝ յարքունիս կալցին։ — ե. Եթէ հասցէ ինչ մնաս նոցա յերկրի իւրում և դաշնակցացն՝ վճարեսցի յարքունուստ։ — զ. Կտակ նոցա հաստատուն լիցի. և եթէ մեռցի ոք անկտակ, և գտցի յերկրի տատ ազգային նորա՝ նմա տացին ինչքն. իսկ եթէ ոչ գտցի ազգային, ինչքն պահեսցին առ մեծի աթենադպրի արքային, որ է արքեպիսկոպոսն Սսոյ, մինչև գայցէ պահանջող՝ վաւերական թղթով դքսի նոցա։ — է. Դատք նոցա դատեսցին յինքեանց. իսկ եթէ չգտցին 'ի նոցանէ՝ դատեսցէ արքեպիսկոպոսն Սսոյ։ — ը. Օտարազգի՝ ամբաստանեալ 'ի նոցանէ՝ դատեսցի յարքունիս. նոյնպէս եթէ սպանութիւն ոք գործիցէ։ — թ. Շնորհի Վենետաց տեղի եկեղեցւոյ և փնդուկի, և բնակութեան. և թուղթ քահանայի նոցա 'ի Մամեստիա. իսկ Գենուացւոց՝ նոյնպէս և 'ի Տարսոն և 'ի Սիս. իսկ թէ այլուր եւս բնակիցին՝ ունիցին իրաւունս գաւառատան առնելոյ։ — Նոր Պարգևագրով յամի 1215 յաւել Լևոն շնորհել Գենուացւոց, ժ. Թաղ կամ փողոց մի (Vicum unum) 'ի Տարսոն, հաստատել եկեղեցի, բաղանիս, փուռն, պարտէզս, և այլն. և ազատ անդուղարձ ամենայն ուրեք, բաց 'ի միճակաց չորից մեծամեծ Պարոնայց իւրոց. որք են, Ոթոն Տաբարեայ (Tabarie)[1], Սիր Ատան, և տեարքն Կոռիկոսի և Կապանի։ Միայն պարտս դնէր սոցա, յառաջնում Պարգևագրին, ժա, զի ամենայն ուրեք պաշտպան և ջատագով կայցեն թագաւորին և Հայոց. յայտ է թէ այսպիսի ինչ պահանջէր և 'ի Վենետաց։ Բայց այսոցիկ պարգևագրաց՝ միայն 'ի լատին լեզու թարգմանութիւնքն մնան արդ՝ 'ի դիւանս Վենետկոյ և Գենուայ, ոչ բնագիրքն, սակայն հին պատճէնք են վաւերականք։ — Կարի ընդարձակ շնորհեալ էր սոցա ազատութիւն կամ թեթևութիւն 'ի բաժից. քանզի և որ 'ի ձեռն նոցին ընդ այլոց լինէր վաճառակցութիւն և առևտուր, հայթհայթէր մուտս 'ի գանձ արքունի։ — Հաւանօրէն եդեալ էր Լևոնի դաշինս և ընդ Պիզացւոց, որպէս արար և թոռնեայն իւր Բրինձն Ռուբէն-Ռեմունդ, կամակցութեամբ նորին, (et consensu... Domini Leonis Illustrissimi Regis Armeniæ, avunculi mei)։ Հաւանական է և այլոց ընկերութեանց իտալական քաղաքաց և պետութեանց՝ ըստ օրինակի սոցին յաճախել 'ի Կիլիկիա առ Լևոնիւ, սակաւ ինչ նուազ ազատութեամբք քան զառաջինսն։

Թէպէտ ոչ փոքր նպաստ էր առևտուր վաճառուց կենդանարար բարգաւաճանաց Սիսուանայ, և օժանդակ հնարից և ճգանց Լևոնի, այլ մեծապէս եւս յաճախէր

1 Տաբարիա կամ Թաբարիա (Thabaria) քաղաք էր Գալիլեոյ, և է կոչեցեալն յԱւետարանս՝ Տիբերիա, առ համանուն ծովակին. Ոթոն որդի Գաւտիերի (Gautier) պէսպէս օրինակաւ անուանի և գրի, Ottho, Otte, Hostius, Hoste. և ըստ այսմ յետին կոչման՝ երևի նոյն ինքն «Իշխանն Ճկերոյն Աւոտն», զոր տեսաք (յէջ 471) նախագահ համօրէն Պարոնայց Հայոց, յետ Սիր Ատանայ։

այնու՝ որպէս և ուսմամբ լեզուաց՝ ընտելութիւն ժողովրդեանն ընդ արևմտեայց՝ գիտութեանց և արուեստից, եթէ ոչ և այլ հոգք մեծամեծք 'ի վերայ հասանէին, և այն գրեաթէ միանգամայն իսկ անդէն 'ի սկզբան Թագաւորութեանն, և գոգջիր մինչև 'ի սպառ. համայն և այնպէս ըստ իւրում հարուստ հանճարոյ և պնդութեան սրտի և բազկի՝ առ ամենայն հասանէր, առաւել կամ նուազ յաջողութեամբ. զամենայն յանձանձէր, յամենայն կողմն և առ ամենեսին դառնայր. յար 'ի շարժման, հանապազ յոգորումն, առ 'ի յառաջատութիւն անյեղլի և անյաղթ կամացն և դիտմանց: Եւ ըստ այսմ բարուց՝ 'ի դէպ է ասել, եթէ ոչ միշտ յօտարաց՝ այլ և անձամբ անձին առթէր երբեմն տագնապս, անտեղիտալի ունելով ոգի և տենչ տիրապետական. և ինձ այսպէս թուի, զի եթէ էր յաջողեալ նմա, ըստ դաշանցն կռելոց ընդ Պեմունդի Գ, խաղաղօրէն ժառանգեցուցանել Թոռնէի իւրում զՍնտիոք, ստէպ բաղխելոց էր ընդ մերձաւոր սուլտանս Հալպայ և Իկոնիոնի, իբրու եկամուտ 'ի բաժինս քրիստոնէից. գիտակ գոլով և սոցա զօրութեան Թագապսակ հայկական առիւծուն, նկրտէին ըստ բերելոյ պատեհին՝ կանխել կոխել զսահմանս նորա: Բայց վտանգն մեծ և գործ յերկար, կամ մանաւանդ խափանարար մեծագոյն բարգաւաճանաց և ձեռնարկութեանց Լեւոնի, որ և պնդութեան մտաց նորին հռչակագոյն յայտարար, յԱնտիոքայ մարզէն ծագեցաւ, յոր հարկ հասանէ և մեզ մխել և յերկարել զբանս, թէ կամաւ և թէ ակամայ:



220. Ըմպանակ պղնձեայ ոսկեզօծ *:

* Թէպէտ և ոչ հին և ոչ վաւերական կարծեմ զըմպանակս զայս, յորոյ մէջն երեւի պատկեր նման դրամոյ և կնքոյ Լեւոնի, և յեզերսն՝ քանդակք այլ և այլ կենդանեաց և հաւուց, այլ զի կամեցեալ է արուեստաւորին, (որպիսի և է մոօք), տալ զայն համարել Լեւոնի, կամ միոյ ուրուք 'ի յաջորդաց նորին Թագաւորաց Ռուբինեանց, կամեցաք յաւելուլ և զայն 'ի շարս յիշատակարանաց Սիսուանայ:

# ԴՐՈՒԱԳ Ջ·

*Անտիոքեան խնդիրն ։ Պաշտպանել Լեւոնի եւ իշխանացուցանել զՌուբէն–Ռեմունդ ։*

Պատմեցաք 'ի վեր անդր զերդմնակուռ պայման ապագայ պայազատութեան Թոռին Բրնձին Անտիոքայ՝ ըմբռնելոյ 'ի Լեւոնէ, եթէ ընծայեսցի զաւակ արու յորդւոյ նորա և յԱլիծայ դստերէ Ռուբինի Բ, որպէս և եղեն. և յետ ոչ բազմաց հայր երախային Ռեմունդ՝ ժառանգն Անտիոքայ՝ մեռաւ տարաժամ (1198). ըստ ոմանց՝ մոլեգնութեան ախտիւ հարեալ, և ըստ այլոց՝ յիսմայելացի դաւաճանաց վիրաւորեալ 'ի մահ. բայց մինչ չև էր հասեալ 'ի շունչ վախճանին՝ կոչեաց զհայր իւր ծերունի (Պեմունդ Գ), և միաանգամ երդմնեցոյց ըստ նախ եդելոյ ուխտին՝ նստուցանել յաթոռ իւր զորդեակն դեռաբուսիկ. զոր և պատուիրեաց կոչել զուգապէս յանուն իւր և 'ի մայրենի հաւուն՝ Ռուբէն–Ռեմունդ. և ծերն յօժարութեամբ ընկալեալ՝ յաջորդ իւր զնա հռչակէր, և տայր երդնուլ իւրայոցն զերդումն հաւատարմութեան կամ հլութեան նմա, յետ մահուան իւրոյ. և կնքեալ զայս ուխտ վաւերական՝ յանձնէր 'ի Լեւոն։ Այլ որդի նորա կրսեր և համանուն՝ Պեմունդ, որ արդէն յափշտակեալ էր զկէս իշխանութեան նորին, և անուանէր կոմս Տրիպօլսի, աչաքն՝ վասն որոյ և կոչմամբ՝ Միակնի (Le Borgne), այլ մտօք չարաչար սրատես, խանդացեալ ընդ բարգաւաճանս Լեւոնի այն ինչ թագաւորեցելոյ և յամենեցուն մեծարելոյ, որում պարտական եղև պատուադրութեան՝ հայր իւր և ամենայն երկիրն Անտիոքայ, խոկայր և կասկածէր՝ թէ 'ի մեռանել հօրն, անշուշտ ժառանգին՝ Ռուբինի տղայոյ՝ պայլ և խնամակալ լիցի հայրագիր նորին Լեւոն, և ընդ ձեռամբ իւրով արկցէ՝ գէթ ընդ երկար ամս՝ զամենայն իշխանութիւնն. և եթէ անուամբ ոչ՝ այլ իսկապէս նա լիցի Բրինձ Անտիոքայ, և թերևս եղջիւր ածցէ իշխանութեանց արևմտից՝ որ յայսկոյս ծովու. ապա հարկ համարէր կանխել զառաջս առնուլ վտանգին։ Եւ զի այր խստասիրտ էր և իշխանութեան սիրող՝ ոչ պակաս քան զԼեւոն, չէառ ակն և հայրենի հնացեալ ալեացն. տեսեալ զնա հլու և հաւատարիմ իրաւանց անդրանկանն և շառաւեղի նորին, արար իւր համախոհս և անկուշեաց ծնողին, մերժեալ ընկէց 'ի գահէն, և համբաւեաց զինքն իշխան Անտիոքայ։ Ցեղակարծուց խուճապեցաւ Լեւոն, մինչ վստահ 'ի խոստմունս և յերդումն Բրնձին Անտիոքացւոց՝ կայր պարապեալ 'ի յանձանձանս նորոյ թագաւորութեանն. սակայն ոչ յապաղեաց զօր գումարել՝ ըստ ժամուն ներելոյ, և դիմել խափուցանել զհրդեհ ապստամբութեանն մինչ չև ճարակեալ։ Աստանօր խորագէտ խորագիտի պատահեալ և յամառ ընդ յամառի, յերկոցունց կողմանց յերկարէր հակառակութիւնն. քանզի գիտելով ինքնակոչ Բրնձին՝ եթէ ոչ կարէ իւրայովքն միայն զդէմ ունել հզօրագունին, ճարտարութեամբ խոստմանց և ողոքով՝ յանկոյց յինքն զերկուսին կարգս քաջամարտիկ Ասպետացն, զՀիւանդանոցին և զՏաճարին. զի սոքա յետինքս վաղագոյն իսկ գժդմեալ էին ընդ Լեւոնի, վասն գրաւելոյ և չտալոյ նոցա զԿապանին բերդ՝ զնուաճեալն և զլքեալ 'ի Սալահէտտինէ. այսպիսի իմն պատճառս տժգոհութեան թուի և միւսոցն ունել. վասն այնորիկ միաբանեցան ընդ հայրանենգ կոմսին։ Զգաց դժուարութեանն, այլ ոչ թուլացաւ Լեւոն, և փութացաւ գալ պաշարել և նեղել զԱնտիոք, մանաւանդ զի հաւատայր եթէ ոչ ամենայն Անտիոք հաւանեալ իցէ տէրութեան Տրիպօլեցւոյն, այլ պատկառ կայցեն ողջախոհքն՝ երդմանցն և իրաւանց։ Երկմտեալ թերևս և ինքն զրկողն ընդ իւրսն, և ոչ բաւականս վարկուցեալ զԱսպետսն 'ի վանել զթագաւորն, աջողագոյն ևս խորագիտութեամբ՝ գրգռեաց յարոյց ընդդէմ նորա՝ մերձաւոր և ահաւոր թշնամի, ըզսուլտանն Իկոնիոնի՝ Ղլըճ-Արսլան Բ Քէյխոսրու. իսկ Լեւոն ընդ խորագիտութեան և զքաջութիւն իւր հանդիսացոյց, միայնակ 'ի մէջի չորից զօրութեանց ժուժկալելով, թերևս և հնգից. քանզի և զսուլտանն Հալպայ զիւր դրացի դրդեալ ասի Պեմունդի՝ ձեռն տալ դենակցին իւրում Իկոնիացւոյ՝ ընդդէմ Լեւոնի. իսկ սա 'ի ձեռն լրտեսաց իւրոց դարանակալաց՝ կալեալ զպատգամաւորս կոմսին՝ և աչաբեկ արարեալ, ետ խոստովանել զամենայն ստուգութեամբ. և նախ ընդ հզօրագունին դիմամարտել պատշաճ համարեցաւ. դարձոյց զթիկունս յԱնտիոքայ, խաղաց արագ արագ 'ի վերայ իւրանման Առիւծ (այլ և Սուր) անուանելոյն. և յետս ընկրկեաց յիւրոց սահմանաց. գաշամբք՝ կամ դիմակաց գնդիւք՝ խափանեալ զարշաւանս նորին։ Յետ այնր՝ սարտոյց թափեաց 'ի կոմսէն զԱսպետսն, և նոցին օգնականութեամբ յաղթեալ դիմակայիցն, հալածեաց զանիրաւեալն 'ի հայր իւր և 'ի թոռնեայն՝ յօրինաւոր տեարսն Անտիոքայ, և վերստին հաստատեաց զԲրինձն ծեր 'ի բռնաբարեալ աթոռ իւրում, յանձն արարեալ 'ի նա և զժառանգն՝ զթոռն նորա զտղայն Ռուբէն [1]։

Այս իւք տևեալք ցամիս երիս [2] եղեն որպէս թուի յամարանի թագադրութեան տարւոյն (1199), կամ 'ի

1 Զայս այսպէս ծանուցանէ Լեւոն թղթով առ Իննովկ. Գ. In his Templarii et Hospitalarii a rationis tramine non dissentientes, præmissa mala postposuerunt et nobiscum pacem inierunt. Postea congregato exercitu nostro, tandiu laboravimus invigilantes, quoadusque Principem in principali sede sua sedere et in civitatem suam honorifice recipi cognovimus.

2 Թուղթք Իննովկենտեայ. Բ, ՄԾԲ։ — ՀՈՒՐԴԵՐ։

միւսում ամին։ Զայս արարեալ Լեւոնի՝ աճապարեաց գրել ծանուցանել զամենայն՝ Քահանայապետին Հռով֊մայ, առաքելով հրեշտակս և Թուղթս և ընծայս ար֊ժանավայելս, որպէս խոստովանի և ընդունողն 'ի պա֊տասխանւոջն՝ ճոխս և առատօրէն լինել. (Nos per eundem Nuntium tuum magnifice et liberaliter visitasti)։ Դեսպանն էր Ռոպերդ Մարկաղեան՝ 'ի զարմէ տերանց Մարկաղայ ամուր բերդի 'ի ծովեզեր Ասորւոց, ընդ մէջ Անտիոքայ և Տրիպօլեայ, զորդիս կոչեցեալ Գալադ-էլ-Մարգապ. և իբր հնգետասան ամօք յառաջ (1186) վա֊ճառեալ Հիւանդատան ասպետաց. յայն սակս և Ռոպերդ մտեալ էր 'ի ծառայութիւն Լեւոնի, և կոչի 'ի սմանէ «հաւատարիմ և սիրելի զօրական իւր [1]»։ Գրէր Նա 'ի Թղթի իւրում՝ յետ պատմելոյ մի ըստ միոջէ զեղեալսն յԱնտիոք, զաւելին լսել 'ի դեսպանէ ատտի իւրմէ. աղաչե֊լով դատ առնել և խափանել զանիրաւութիւն բռնաբա֊րող կոմսին. միանգամայն և փութալ յօգնութիւն պաշտ֊պանութեան երկրին Ասորւոց, մինչ չև իսպառ բարձեալ



221. Դրօշ Սրբոյն Պետրոսի.

յուսոյ փրկութեան։ Առ այսոսիկ պատասխանի առնէ Քա֊հանայապետն յ' 17 դեկտեմբեր ամսոյ, ոչ երկբայել ընդ գրեալսն, այլ օրէնս զոլ արդարութեան՝ լսել և հակառակ կողմանն. վասն որոյ և յանձնէր զխնդիրն՝ երկուց Նուի֊րակաց իւրոց՝ քննել և դատել անաչառապէս. և աղաչէ զԼեւոն՝ մի զանձնական չահ վերադասել քան զհասարա֊կացն, որ է Նիզակակցութիւնն ընդ Խաչակիրս, այլ դա֊դարել 'ի մաքառելոյ ընդ կոմսին, մանաւանդ զի և հայր Նորա (Պեմունդ Գ) վերահաստատեալ 'ի գահն՝ գրեալ էր առ ինքն (Պապն), պաշտպան կալ իրաւանց ժառան֊գութեան Թոռինն։ — Տուեալ էր Քահանայապետին և այլ Թուղթ՝ 'ի նմին աւուր, խնդալով և խնդակցելով ընդ յօժարութիւն Լեւոնի 'ի խաչակրութիւն և 'ի մարտ ընդ֊դէմ այլազգեաց. վասն որոյ և ըստ խնդրոյ դեսպանին, և 'ի նշանակ սիրոյն իւրոյ առաքէր 'ի ձեռն Նորա զնշան կամ Դրօշ Ս. Պետրոսի, զի այնու ելցէ ընդդէմ թշնա֊

[1] Ոչ գիտեմ այս Թուղթ էր եթէ այլ Թուղթ նախ քան զայս գրեալ 'ի Լեւոնէ, զոր՝ պատմիչ ոմն ասէ մատուցեալ դեսպանաց Նորին առ Քահանայապետն, մինչ գտանէր սա 'ի Բոլոնիա քա֊ղաքի Իտալիոյ, առ որ մատեան առաքեալքն 'ի Թագաւորէն Հա֊յոց՝ ընդ դեսպանաց Պետրոսի Թագաւորին Արագոնի։ — ՖԱԼԷՈ֊ՆԻ (FALEONI), Պատմութիւն Եկեղեցւոյն Բոլոնիոյ։

մեաց խաչին [1]։ Ի նմին աւուր գրեալ է Քահանայապետին և առ աւագագոյն Պարոնայս Լեւոնի, առ Բակուրան (Թէպէտ և Բական, Pagan, գրեալ է 'ի Թղթին), որ է աներկբայապէս քեռի նորին՝ տէրն Պապեռօնի, և առ Ազօն, որպէս գրի 'ի տպագիր պատճենին. այլ զի սա ոչ 'ի պատմութեան յիշի և ոչ 'ի կարգի բերդատեարցն, կարծեմ թէ Հեթում է (Aiton 'ի լատինն), տէրն Լամբրունի և եղբայր Ս. Ներսիսի. առ որս ծանուցանէ՝ զառաքումն դրօշուն առ Թագաւորն, և յորդորէ նիզակակցել ընդ նմին և ընդ այլոց խաչակրաց՝ 'ի հերքումն հակառակորդաց՝ քրիստոնէիցն [2]։ Ի դառնալ դեսպանին առ Լեւոն, պատասխանի շնորհակալեաց գրեաց սա 'ի Սսոյ՝ յամսամտին հոկտեմբերի, 1201 ամին։ — Ցերեսին արքունական պսակս՝ զոր յերից մեծագոյն տիրապետաց երկրի մեծարանօք ընկալաւ Լեւոն, ('ի կայսերէ Ալամանաց, յինքնակալէն Կ. Պօլսի և յամիրապետէն Մսրմաց), յաւելեալ գերունակս այս Նշան տիեզերական Քահանայապետին եկեղեցւոյ, 'ի դէպ է ասել՝ եթէ չքեղացոյց զգլուխ Թագաւորիս մերոյ՝ ոչ միայն քան զգլուխս առաջնոց և վերջնոց Թագաւորաց մերոց, այլ և քան զամենայն ժամանակակցաց իւրոց, (զի մի՛ հետախոյզ եղէց յայլ և այլ դարս). այլ մեզ առաւել պանծալի է այս, զի ինքնին Լեւոն իւրովք արդեամբք արժանացաւ ձգել յինքն զպսակսն, և զայնքան վեհագոյն գլուխս՝ կամ խոնարհել կամ հաւասարել գլխոյ իւրում, և հարկատուս իմն առնել պատուոյ. որով, եթէ ոչ խաբիմ, բարձրագոյն կէտ է այս՝ ոչ միայն իւր՝ այլ և համօրէն Հայկական աշխարհական փառաց։

Որքան մեծ էր գութ Քահանայապետին ընդ Թագաւորս մեր և յոյս նիզակակցութեան սորին ընդ խաչակիրս, որոց՝ յայնժամ և յետոյ (1203) խոստանայր Լեւոն տալ գունդ օգնականի երկուց բիւրուց զօրաց, այնքան և անգութ անհաշտ մախանք կոմսին Տրիպօլիս՝ խափան լինէին մեծագոյն օգտի քրիստոնէից երկոցուն ևս կողմանց, արևմտեայցն և Հայոցս, և նորանոր պղտորմանց և վրդովմանց պատճառք։ Քանզի ամենայն հնարիւք և բանսարկութեամբ ջանայր նա՝ ոչ միայն քակտել 'ի Լեւոնէ զնիզակակիցսն, և դարձեալ յարուցանել 'ի վերայ նորա զայլազգիս, այլ և զիւր իսկ զհայրն, ասեն, որ և զառանցեալ Թուի մտօք, ստապատիր բանիւք ուծացոյց 'ի Լեւոնէ և գթեցոյց 'ի կամս իւր [3]։ Հրապուրէր և զիշխանսն եկեալս յարևելս 'ի խաչակրութիւն՝ ընդդէմ Լեւոնի, ընդ որս յիշին յանուանէ Հռեգինալդ կամ Հռենալդ որ և Ռընար ըստ Փռանկաց (Renard comte de Dampierre) կոմս Տամբիէրի, և Ցովհան կոմս Նիգելլայ (Nigellas). այլ սա հարեալ 'ի տենդէ՝ մեռաւ յերկրի անդ [4]։ Իսկ առաջինն՝ 80 ձիաւորօք և այլովք օգնականօք յախուռն դիմելով, հարաւ յայլազգեաց 'ի սահմանս Լաւոդիկեայ, և ձերբակալ եղեալ վարեցաւ 'ի Բերիա, ուր և զամս երեսուն արգելեալ 'ի գերութեան, անագան ուրեմն դարձաւ յերկիր իւր [5]։ Ապա յինքն կրթեաց կոմսն զՏաճարական ասպետս, զորս ոըսացեալ էր Լեւոնի՝ տալով նոցա կալուածս ինչ յերկրի իւրում 30,000 ոսկի բիզանդաց արժէիւք. վասն այնորիկ և օգնական եղեն նմա 'ի վանել զկոմսն և դարձուցանել զհայր նորա յաթոռն. իսկ այժմ հրապուրեալք 'ի նմանէ՝ խնդրէին 'ի Լեւոնէ և զհին կալուած իւրեանց՝ զԿաստիմ բերդ, զոր գիտէր կոմսն եթէ ոչ առնու յանձն Լեւոն հանել 'ի ձեռաց, իբրու կարևոր ամրոց սահմանակալ Անտիոքայ։ Իսկ Լեւոնի ոչ ունելով կասկած զոցանէ, պատրաստէր յարձակիլ 'ի վերայ Իկոնիացւոց՝ յամսեան յուլիսի (1201), մինչդեռ յերկպառակութեան էին սուլտանն և որդիք նորա. հրաւիրեաց և զՏաճարականսն 'ի նիզակակցութիւն. և իբրև եկին սոքա փութով յԱնտիոք, ընդ առաջ ել նոցա Լեւոն պատուասիրել իմն կամելով. այլ յապուշ կրթեցաւ, յորժամ փոխանակ օգնականութեանն՝ մատուցին նմա Թուղթ մի 'ի Քահանայապետէն (անթուական). որով ծանուցանէր սա՝ զի թէպէտ լուաւ 'ի դեսպանէն (Լեւոնի, 'ի Ռոպերդայ) զփաստս նորա, իբրու զի Կաստիմ զառաջինն կալուած էր Մլեհի հօրեղբօր իւրոյ, և յետոյ ինքն կորզեաց յայլազգեաց, սակայն զի վաղագոյն ևս ասպետացն էր վիճակեալ տեղին, անօտարանալի համարէր. յայս սակս ըստ իւրում իռհականութեան՝ ամօք բանիւք (զոր և մեղրածորան [6] կոչէ Լեւոն), յորդորէր զԹագաւորն, յանձնել առ նոսա առ ժամն զտեղին, և զխնդիր իւր քննել յատենի իւրում կամ 'ի նուիրակացն՝ զոր փութով առաքելոց էր յարևելս, և անսալ վճռոյ նոցին [7]։ Ցանձն էառ Լեւոն առնել այնպէս 'ի գալ նուիրակացն և 'ի քննել, և զՌուբէն ևս յանձնել 'ի նոյն իսկ ասպետսն, զի մարզեսցեն յարիական հրահանգս. այլ առ ժամն աղաչէր շատանալ այլովք կալուածովք՝ զոր ետ նոցա, և խոստանայր ևս մինչև յաւարտ դատին՝ տալ նոցա զհասս բերդին Կաստիմայ, և 'ի վերայ այնորիկ՝ ձեռն տալ նոցա առ 'ի թափել զբերդն Դարպսակ ամենայն նահանգաւն. բայց միայն զի եկեսցեն յօգնութիւն ընդդէմ այլազգեաց։ Իսկ նոքա ոչ առնուին յանձն. ապա խնդրեաց՝ զի եթէ ոչ կամին 'ի մարտ մտանել, գոնեա զգուշասցին պահպանութեան երկրի իւրում, մինչ ինքն միայնակ երթիցէ 'ի վերայ այլազգեացն. և իբրև այսմ ևս անլսող լեալ յամառութեամբ՝

1 .... Nos igitur tuæ devotionis sinceritate confisi ad petitionem dilecti filii Roberti de Margat, militis, nuntii tui, in nostræ dilectionis indicium, *Vexillum Beati Petri* tuæ Serenitati dirigimus; quo in hostis Crucis duntaxat utaris, et eamdem studeas contumaciam, cum Dei auxilio, suffragantibus Apostolorum Principis meritum, refrenare. — Datum Laterani, XVI Kalend. Januari. — Թղթք Գ Իննովկ. Բ. ՄԾԳ. ՄԾՁ։

2 Դրօշ Ս. Պետրոսի՝ որ և անգստին յ՛Է դարէ յիշի 'ի Քահանայապետից Հռովմայ առաքեալ առ Թագաւորս ոմանս՝ յընծայ և 'ի խրախոյս, ունէր զխաչաձև նշան երկուց բանալեաց, և 'ի վերայն կամ զպատկեր առաքելապետին կամ խաչ։ Սոյն Պապ Իննովկենտ. Գ, առաքեաց և առ Ցովհաննիկ Թագաւոր Վլաքաց զԴրօշն՝ նշանաւ բանալեաց և խաչի. մարթի նոյնատիպ համարել և զառաքեալն առ Լեւոն։ Նորին դարձեալ Իննովկենտեայ՝ տես 'ի Վատիկան քարտէնկար պատկերակերպեալ զեկեղեցի՝ դրօշ 'ի ձեռին նշանաւ բանալեացն, և խաչ 'ի ծայր ձողոյն։ Բայց ոմանք համարին ընդ հնագոյն նշանս Քահանայապետաց Հռովմայ՝ զպատկերս երկոցուն գլխաւոր Առաքելոցն, ըստ օրինակիս զոր առաջի արարաք 'ի միւսում իջի, 491։

3 Թուղթք Գ Իննովկ. Ե. ԽԲ։ — ՀՈՒՐԴԷՐ, Գ։

4 Այս դէպք յետոյ ուրեմն եղեն յամի 1203, յելս ամսեան մայիսի և 'ի սկիզբն յունիսի։

5 ՐԻԳՕԱԼՏԻ, առ Մուրադորեայ. RICOALDI.

6 Mellifluis litteris vestris perspicue intelleximus.

7 Վերյիշեալ Թուղթ Քահանայապետին, որ տուեալ է յամսեան հոկտեմբերի այնր (1203) տարւոյ։

*յետ ևս կոչեցին զգունդ իւրեանց, 'ի բաց դարձոյց և Լեւոն զերեսս իւր 'ի նոցանէ, և խաղաց ուր դէմ եդեալն էր. և դարձաւ յաղթական յաջողութեամբ, անվտանգ գտեալ և զերկիր իւր։ Ապա վերստին պաշարեալ նստաւ առ Անտիոքաւ ամիսս երիս, և աղաչեալ 'ի քաղաքացեացն, առ հաճոյս կամաց Քահանայապետին՝ 'ի բաց եկաց. որպէս և ինքնին գրէ, վասն այսր՝ և ոչ առ ահի հրաժարեալ։ Զայս ամենայն երկար թղթով ծանոյց Լեւոն առ Քահանայապետն՝ 'ի ձեռն Կառների Տեւտոնեան ասպետի՝ դեսպանի իւրում[1]. խնդրելով ևս զի եթէ հնար է՝ ընդ նուիրակացն յիշեցելոց առաքեսցէ քննիչ՝ զպսակիչ իւր ծերունի արքեպիսկոպոսն Մոգունտիոյ. (ոչ գիտելով զի վախճանեալ էր սա յամի 1200). և դարձեալ, զի (թուի թէ պատրիարքն Անտիոքայ միաբանեալ ընդ կոմսին սպառնացեալ էր Լեւոնի կամ իւրոցն՝ նզովս), մի՛ ումեք յուխտէ եկեղեցւոյն Լատինաց, զո՛ր և ունիցին աստիճան, լիցի իշխանութիւն ընդ բանիւ առնել կամ զինքն կամ զիւրսն, և կամ զԼատինս բնակեալս յերկրի իւրում. և զի վաւերական կոնդակաւ յայտ արասցէ զայս։ Միանգամայն խնդրէր մի՛ յապաղել զաւաքումն օգնութեան արևմտեայցն խաչակրաց՝ 'ի դէպ ժամուն, յորում այլազգիք երկպառակեալ կռուէին ընդ իրեարս, զի յետ միաբանելոյ նոցա՝ անհնարին առէր քրիստոնէից բաւել զդէմ ունել նոցին։ Գրեաց և կաթողիկոսն Գրիգոր Ապիրատ երկար թուղթ, յաւէտ կրօնական, շնորհ ունելով Քահանայապետին վասն պատուելոյն առաքելական դրօշու զթագաւոր իւրեանց, զոր միշտ Յաղթող կոչէն և ինքն[2] և որ յաջորդեացն զնա Յովհաննէս արքեպիսկոպոս Սսոյ[3]. զի և սա առաքէր թուղթ 'ի ձեռն նոյն դեսպանի, պատրաստական ցուցանելով զինքն 'ի կամս և 'ի հրամանս Քահանայապետին,՝ և խնդրէր 'ի նմանէ զպալլիումն պատուական, զմիթր և զմատանի, որովք օրհնեսցէ և արձակեսցէ զզինուորեալսն ընդ թագաւորին՝ ընդդէմ այլազգեաց[4]։ — Պատասխանիք թղթոց երեցուն ևս մերայոցս՝ տուեալ են 'ի Քահանայապետէն յետ ութ ամսոց, այսինքն յամսամտին յունիսի 1202 ամի, և ըստ իւրաքանչիւր խնդրոյ շնորհեալ և հաճեցուցեալ զնոսա, աւետէ զհաւաքումն խաչակրացն արևմտեայց 'ի Վենետիկ, ուստի անցցեն յարևելս, և զի ընդ նոսա գան երկոքին նուիրակք իւր կարդինալք, Սոփրետոս՝[5] եկեղեցւոյն Ս. Պրաքսիդեայ, և Պետրոս՝ Ս. Մարկելլու. յապահովէ և զԼեւոն հաճոյական բանիւք՝ զի մի՛ ոք կարասցէ ընդ բանիւ առնել զիւրսն՝ բայց ինքն միայն կամ նուիրակ իւր առանձինն հրամանաւ իւրով[6]։ — Բազում ամսօք ևս յետ գրութեանն հասին թուղթքն առ Հայս. և 'ի տարեկան յայսմ միջոցի, որպէս բազմաց կարծի՝ մեռեալ էր ծերն Պեմունդ Գ. (1201), յետ երկար՝ յիսուն և երկու ամաց՝ իշխանութեանն. և որդւոյ նորա կոմսին՝ համարձակագոյն ևս յաւակնեալ այնուհետև առ ոտն հարկանել զդաշինսն, բռնանայր 'ի վերայ գահուն. բայց ողջախոհք ոմանք յաւագացն՝ լքեալ զնա, եկին մտանել 'ի ծառայութիւն Լեւոնի. որք են նախայիշեալքն՝ Սենեկապետն (Զամբռլայն) Ուլիվեր, Մառաջախտն (Պօդլեր) Բայէն, Ռոճեր տը Մութ, Թումաս Մալըպրէօն, Կիյոմ Տըլիլ և Զուարտ. զորոց ոչ ինչ փոյթ արարեալ կոմսին, ոչ իսկ սպասէր գալստեան նուիրակաց Քահանայապետին՝ դանդաղելոց այլուր։ — Քանզի սոցա ընդ բանակին խաչակրաց չուեալ 'ի Վենետկոյ՝ փոխանակ փութալոյ յԱսորիս, նախ 'ի Դալմատիա դեգերեցան, ապա ընդ Յունաց մարտ եդեալ՝ տիրացան Կ. Պօլսի, և կարգեցին յիւրեանց կայսր փռանկ, և անագան ուրեմն եկին 'ի Պաղեստին (1203-4). իսկ նուիրակացն կանխագոյն ժամանեալ էր 'ի վերջ կոյս 1202 ամի 'ի Պտղոմայիս. յորում ժամանակի 'ի զէն դիմեալ էր և Լեւոնի՝ ոչ հանդուրժեալ ժպրհութեան կոմսին, որ ոչ միայն զժառանգն մերժեալ էր, այլ և ստիպէր զԱնտիոքացիս՝ երդնուլ ինքեան հաւատարմութիւն. ոմանք հաւանէին, և շատք՝ ոչ. և էր պատերազմ սաստիկ 'ի մէջ նոցա։ Զայն լուեալ նուիրակաց Քահանայապետին՝ կոչեցին զԿարգապետս Հիւանդանոցին և զՏաճարական ասպետաց՝ 'ի խորհուրդ. և իբրև ոչ գտին ելի աղագս՝ եկն Սոփրետոս 'ի Տրիպօլիս, և հրաւիրեաց անդր զերկոսին դիմամարտսն. և զի անլսողք եղեն և չարարին անգամ պատասխանի, առաքեաց երկուս եպիսկոպոսունս, զԲեդղեհեմին և զԱնտարատոսի, համոզել լինել նոցա[7]։ Յետ երից ամսոց ('ի սկիզբն փեբր. 1203) եկն կոմսն 'ի Տրիպօլիս, ոչ առ նուիրակն, այլ վասն առանձինն ինչ գործոց, այն զի և բանադրեալ էր յամենայն եպիսկոպոսաց՝ վասն վճռից ինչ ընդ Հիւանդանոցի ասպետսն. և ձեռնունայն դարձ արարեալ նուիրակին 'ի Պտղոմայիս, ապա յետ զատկին բազում աւագ և խոհական օրերով նաւեաց եւ յԱնտիոք, առ որով բանակ հարեալ էր յայնժամ Լեւոնի. խնդրեաց 'ի սմանէ դուլ առնել՝ մինչև բանագնաց լինիցին. շնորհեաց Լեւոն աւուրս երիս, և ապա ինն օր ևս, մինչև գայցէ թագաւորն Երուսաղեմի։ Եւ յայն աւուրս 'ի խօսել նուիրակին ողոքով ընդ Լեւոնի, սա զարդարութիւն ևեթ առէր խնդրել և զիրաւունս Ռուբինի և զմօրն. հաւանէր՝ որպէս խոստացեալն էր առ Պապն, անսալ դատաստանի նոցա և Պարոնայցն որ գալոց էին յետ աւուրցն այնոցիկ. և ըստ արդարադատութեան նոցա խոստանայր տալ յօգնութիւն խաչակրաց 20,000 զօրականս. բայց ընկերք Սոփրետոյ՝ բաց 'ի միոյ՝ ամենևիմբ արդարացուցանէին զԼեւոն, մինչև ասել ցնա՝ թէ յայդմ բանի՝ չէ անկ միջամուխ լինել ոչ նուիրակի և ոչ իսկ Պապին. ընդ որ զամօթի հարեալ նուիրակին՝ յետս դառնայր տրտմութեամբ՝ ընդ միայնոյ համախոհին 'ի Մարգատ, և հիւանդանայր. բայց և խոստովանէր 'ի թղթին առ Քահանայապետն[8], եթէ արդա-*

1 *Garnerium Teutonem* ad pedes Sanctitatis Vestræ dirigimus. — Թուղթ Լեւոնի 'ի Ա. հոկտեմբերի, 1201։ — ՀՈՒՐԴԷՐ։

2 Certissime scimus... quia diligitis in Christo nostrum dilectum filium *Leonem, Triumphantem*, Regem Armeniæ.

3 Թուղթք Իննովկենտեայ, Ե. ԽԲ. ԽԴ։

4 Թուղթք Ե. ԽԴ. ԽԵ։

5 Սոփրետոս յազնիւ տոհմէ Սոֆրետեաց Պիստոյայ քաղաքի Իտալիոյ, ընկալեալ էր զծիրանին յամի 1182 և † 'ի 1210։

6 Թուղթք Իննովկ. Ե. ԽԳ։

7 Թուղթ Նուիրակացն առ Քահանայապետն։ — ՀՈՒՐԴԷՐ, Ը։

8 Videbatur mihi petitio ejusdem Regis justa et admittenda; oblatio quoque utilis multum et fructuosa Christianitati.

րացի թուէր ինքեան խնդիր թագաւորին, և մեծ շահ օգտի ակն ունելի է քրիստոնէից՝ 'ի նմանէ։

Տեսեալ Լեւոնի զի ոչ արարաւ դատ՝ որպէս ակն ունէր, եմուտ բռնութեամբ յԱնտիոք ('ի 11 Նոյեմբերի 1203), և կարգեաց զԱյիծ՝ իբրև պայլ որդւոյ իւրոյ Ռուբինի Բրնձի. մինչ կոմսն աճապարեաց անկանել 'ի բերդըն, զոր քաջ ամրացուցեալ էին ասպետքն Տաճարականք, կանգնեալ 'ի նմին զնշան իւրեանց, և սկսան մարտնչել ընդ զօրս թագաւորին 'ի ներքս և արտաքոյ քաղաքին, և յետ երից աւուրց հալածել ևս 'ի բաց[1]։ — Ընդ այս առաւել ևս սրտմտեալ թագաւորին՝ հրաման ետ իւրոցն գրաւել զկալուածս ասպետացն՝ զոր պարգևեալ էր նոցա, և 'ի բաց վարել զնոսա յերկրէ իշխանութեան իւրոյ։ Ի նմին ժամանակի եհաս յԱնտիոք միւս նուիրակն, կարդինալ Պետրոս, և ընկալեալ եղև պատուով 'ի Լեւոնէ։ Ի ժողով գումարեալ սորա զկաթողիկոսն և զեպիսկոպոսունս և զպարոնսյսն, նախ պահանջեաց վերըստին բանիւ և գրով՝ հաւանութիւն միաբանութեան ընդ եկեղեցւոյն Հռովմայ. յետ ոչ սակաւ վիճից՝ հաւանեցաւ կաթողիկոսն, որ էր յայնժամ Յովհաննէս Է, նոր յաջորդեալ զԳրիգոր, առաքել նուիրակ 'ի Հռովմ առ Պապն ըստ հնգամեկի, և գտանիլ 'ի ժողովս նորին անձամբ կամ նուիրակաւ. այլ պահանջեաց և ինքն և հաւանեցոյց, զի մի՛ և յայսկոյս ծովու ժողով լիցի Լատինաց՝ առանց կաթողիկոսի Հայոց կամ նուիրակի նորին։ Եւ 'ի կնքել պայմանացն՝ մատոյց Պետրոս նախ կաթողիկոսին զքահանայապետական պալլիումն, և ապա չորեքտասան եպիսկոպոսաց՝ միթր և գաւազան, առաքեալս ընծայ յԻննովկենտեայ[2]։ Յետ վճարելոյ զեկեղեցական գործն, ձեռնարկ 'ի քաղաքականն, 'ի քննութիւն իշխանութեան Անտիոքայ. Լեւոն անդստին 'ի սկզբանն՝ բողոքեաց յատեան Քահանայապետին, որպէս և գրէ առ նոյն, և վկայս կոչէ զպատրիարքն Անտիոքայ, զգլխաւորս երկոցուն կարգաց ասպետացն և զմիանձունս Սեաւ լերին։ Նուիրակն Պետրոս երիս ինչ առաջարկեաց երկոցուն վիճողացն. նախ, կամ խօսել և իրաւախոհ լինել ընդ միմեանս. այս անհնարին եղև. երկրորդ, զի յանձն առասցեն զվճիռ դատի իւրեանց յինքն և յընկեր իւր Սոփրեդոս. և այս ևս մերժեցաւ. ապա զերրորդն առաջի արար, զդատողական իշխանութիւն իւրեանց՝ տուեալ 'ի Քահանայապետէն, ցուցանելով զկոնդակ սորա, և յորդորելով զի ասասցեն զոր կամին։ Յանձն առնոյր Լեւոն անսալ վճռի նոցուն՝ եթէ նախ 'ի բաց հանցեն զյափշտակողն Պեմունդ՝ յամենայն սահմանաց քաղաքին, և ապա դատ արասցեն։ Ոչ իրաւացի համարեցաւ զայս նուիրակն, և ասէր ցթագաւորն՝ այլ ինչ թելադրել. յայն ժամ չնորհ կալեալ Լեւոնի ասէ. «Դուք կարդինալքդ՝ նուիրակք էք Սրբազան Պապին, և ես թագաւոր Հայոց. յանձն առնեմ ձեզ զխնդիր թոռին իմոյ և զմօր նորին. սոյնպէս դատ արարջիք՝ որպէս առնէր Սրբազանն, եթէ յանդիման լինէաք նմին՝ վասն որբոյս այսորիկ և այրւոյս. և ում իրաւացի դատիք՝ նմա եղիցի Անտիոք»։ Այսպիսի ինչ առաջարկելով և Անտիոքացւոց, փոքր 'ի շատէ հաւանեցուցեալ՝ պատուիրեաց նուիրակն երկոցուն կողմանց՝ մի՛ ևս վիճել և հակառակել, մինչև կատարեսցեն զքննութիւնն. և դարձաւ 'ի Պտղոմայիս։ Անդր հաւաքեալ և թագաւորն Երուսաղեմի, և բամբիշն Ֆլանտրայ Մարիամ՝ կին Պալտուինայ՝ (յետ սակաւուց) նորոյ կայսեր Կ. Պօլսի, կարգապետք ասպետաց, և ամենայն աւագանին՝ ստիպէին զնուիրակն՝ ամենայն փութոյ պնդութեամբ ջանալ բանադատել զվիճողսն 'ի հաշտութիւն խաղաղութեան։ Վասն այսորիկ առաքեցաւ եպիսկոպոսն Կրեմոնայ (Սիկարտ) աւարտել զգործն. և եկեալ պահանջեաց յերկոցուն կողմանց գրով խոստումն զինադուլ առնելոյ, տալոյ ևս գրաւ և պատանդ հաւատարմութեան խոստմանցն՝ մինչև հատցի վճիռն. սպառնացեալ՝ ընդ բանիւ առնել զտունգանողն։ Յանձն էառ թագաւորն զպայմանսն. խոստացաւ զինադուլ առնել ցաւուրս քառասուն, ևս և հաճեցուցանել զՏաճարականսն։ Իսկ կոմսն ոչ բանիցն հաւանէր և ոչ 'ի կոչն գայր. յայնժամ պատգամաւորն Լեւոնի՝ Կոստանց Կամարտիաս, յուշ առնէր նուիրակին՝ զոր ասացն, ընդ բանիւ առնել զանհաւանն, որպիսի էր կոմսն յամառեալ։ Այլ նուիրակն զանգիտեաց առնել զայս, համարելով այնու խապառ խափան լինել գալոյ կոմսին 'ի կոչն. և պատճառելով ինքեան հարկ կարևոր փութով երթալոյ 'ի Կ. Պօլիս՝ մեկնեցաւ անդր. գնաց ընդ նմա և առաջին նուիրակն Սոփրեդոս, որ ոչ հաւանէր ընդ գործս Պետրոսի. ստգտանէր զնա և լռելեայն յունկն այլոց եպիսկոպոսաց, և համարձակապէս 'ի ժողովի՝ իրաւացի ասէր զպահանջ դեսպանի թագաւորին, այսինքն զբանադրանս կոմսին. զոր և յօժարէր կատարել, եթէ միաբանէր միւս կարդինալն, ապա թէ ոչ՝ հրաժարէր 'ի դատաստանէ աստի[3]։ Իսկ ինքն գուն գործեալ յաջողեցաւ առ վայր մի հաշտութիւն առնել ընդ թագաւորն և ընդ Տաճարականս. այլ սոքա դարձեալ գժտեցան և բողոքեցին 'ի Հռովմ։ Եւ այսպէս նախ անհաւատարմութիւն կամ անմիաբանութիւն ընկերաց Սոփրեդեայ, ապա դեդևանք մտաց Պետրոսի և եպիսկոպոսին Կրեմոնայ, յամառութիւն միականի կոմսին, 'ի դերև հանին զպատեհ աւարտման վճռին. յորում միայն Լեւոն չափաւորապէս զիջանելով վեհագոյն հանդիսացաւ, երկրորդումբ ևս ցուցեալ՝ զի զարդարութիւն խնդրէր և ինքեան էր անկ. իսկ տատամսութիւն դատաւորացն՝ ոչ միայն պատճառք եղեն յերկարելոյ ցտասն և աւելի ևս ամս վիճից և հակառակութեանց, ծանր ծանր վնասուք երկոցուն վիճողացն, այլ և տուժիւք հեռաւոր և մերձա-

1 Տարեգիրք ասեն միայն կացեալ Լեւոնի յԱնտիոք աւուրս երիս. MCCIII. Entra le Roy Lyvon en Anthioce devers le chastel, le jour S. Martin et prist tant que au temple, et demoura dedens IIJ jours.

2 Պատմէ զայսոսիկ Սիկարտ՝ եպիսկոպոս Կրեմոնայ քաղաքի։

3 Tandem ego Soffredus, advocatis seorsum Domino Cardinali (Petro), Cæsariensi archiepiscopo, episcopo Cremonensi et Acconensi electo, firmiter proposui eis, quod ego coram Deo et eis de hoc facto excusatus esse volebam, et videbatur mihi pro certo, quod *instantia prædicti Nuntij justa esset et admittenda:* et ego paratus eram, si placeret Domino Cardinali, quod petebatur efficere, pro eo quod sic fuerat communi deliberatione nostra, Hierusalem Regis, Templariorum, Hospitaliorum, Baronum, peregrinorum qui Accone aderant, irrevocabiliter statum atque firmatum, taliter et sic solemniter statum pro utilitate Christianitatis, inefficax esse et illusorium. — Թուղթ Նուիրակացն առ Պապն։

ւոր արեւմտեայց Խաչակրաց, որոց ահա պատրաստ էր Լեւոն տալ յօգնականութիւն բիւրս մարտկաց, որպէս և երբեմն Նախնին իւր Թորոս, և յերկոսին ևս Նուագս անխոհականութեամբ կամ ագահութեամբ՝ վրիպեցան Լատինք 'ի կարևորագոյն օժանդակութենէ Հայոց, մինչ դեռ յուժի կային սոքա, և չև ևս էին վատթարեալ՝ օրինակաւ Նոցին արեւմտեայց համարձակ բարուց, և 'ի առէպ հարուածոց եգիպտական սուլտանաց, զորոց ոչ կարացին Խաչակիրքդ խորտակել զօրութիւն, առ անմիաբանութեան իւրեանց և անզգաստութեան։

Ցանտիոքեան խնդիրս խառնեցաւ, որպէս տեսաք, և Տաճարականացն, չարաչար քան զառաջինն. զի վասն զկողմն ունելոյ Նոցա զկոմսին, յետ բազում անգամ ողոքանաց՝ մերժեալ էր զնոսա Լեւոնի յերկրէ իւրմէ և 'ի կալուածոց Նոցին. այլ և, ըստ ամբաստանելոյ Նոցա առ Պապն, զկարասի Նոցին 'ի հուր դատեալ էր, զանասունսն յափշտակեալ, վնաս գործեալ 50,000 ոսկի բիզանդաց, խոշտանգեալ զոմանս յեղբարցն, և պատնիչափակ պաշարմամբ արգելեալ զել և զմուտ երկուց ամրոցաց Նոցին, անուանելոց Գուլիելմաքար (Rupes Willelmi) և Հռուիսոլի-քար (Rupes Ruissoli), յայտ է թէ 'ի սահմանամէջս Հայոց և Անտիոքայ[1]: — Քահանայապետն իրաւասէր, այլ և վրէժխնդիր պաշտպան ընչից ամենայն Նուիրական անձանց, որպիսիք համարէին և ասպետքն կրօնակարգք, գրեաց առ Լեւոն (18 յանուարի, 1204) ստգտանելով ազնուապէս, և վասն այոր խնդրոյ կարգելով դատաւորս զեպիսկոպոսունս Վալլանիայ և Պիպլիայ քաղաքաց երկրին Ասորւոց, յորդորելով անսալ բանից Նոցին՝ իբրև եկեղեցական անդիմադարձ վճռոյ։ Եկեալ եպիսկոպոսացն, (զորոց զհետ թուի վերադարձեալ և Պետրոսի), առաջի արարին Լեւոնի զկամս Քահանայապետին. Թագաւորն՝ յաւէտ զմախանս ասպետացն Նշմարելով 'ի բանին՝ դժուարանայր առնուլ յանձն. ապա 'ի կրկնել և յերեքկնել պատգամին՝ խոստացաւ զամենայն զոր գրաւեալն էր դարձուցանել առ ասպետսն, բայց միայն և զի Նոքա երդմամբ 'ի բաց կացցեն 'ի հակառակելոյ իրաւանց Թոռին իւրոյ[2]: Իսկ իբրև Նոքա խստաբար և խժաբար պատասխանի ետուն, եթէ բնաւ ամենևին ոչ դադարեսցուք 'ի պաշտպանելոյ զպարիսպս Անտիոքայ ընդդէմ քո, մեծապէս սրտմտեցաւ Լեւոն, որոյ չէր մերկացեալ զառիւծու ճիրանսն, այլ գիտաց տակաւին ժոյժ ունել, և չատ համարեցաւ զանհաւան լռութիւնն։ Իսկ Նուիրակն Պետրոս, որ յառաջն զանգիտելով բանադրել զպարտական Տրիպօլսեցին՝ խոյս ետ մինչև 'ի Կ. Պօլիս, աստանօր աճապարեալ, ոչ դնելով ունկն բողոքոյ Լեւոնի առ Քահանայապետն, ժողով գումարեաց յԱնտիոք, ոչ զպատրիարք տեղւոյն հրաւիրելով և ոչ զՀայոցն, և հրատարակեաց ընդ բանիւ լինել զՀայս. և ոչ այսչափ միայն, այլ և առ կաթողիկոսն Յովհաննէս գրեաց՝ զնոյն հրատարակել։ Գումարեալ և սորա զեպիսկոպոսունս իւր, արար պատասխանի՝ ոչ ընդունել զվճիռ ժողովոյ Նորա, յարում ոչ պահեցան պայմանքն սակաւուք յառաջ եղեալք, զի ոչ գտաւ անդ ոչ կաթողիկոսն Հայոց և ոչ Նուիրակ Նորին, և այն՝ առ կւան իսկ սահմանաց կաթողիկոսութեան իւրոյ։ Ապա գրեցին և ինքն և Թագաւորն՝ առ Քահանայապետն, եթէ մեք պատսպարեալք 'ի ծոց մօր եկեղեցւոյդ՝ ակն ունէաք կաթին և ոչ այսպիսւոյ լեղւոյ և քացախոյ։ Իսկ Լեւոնի չմնայր 'ի պահուն այլ ինչ, բայց բարձրացուցանել զբարբառ իւր, կամ մռնչիւն մի ածել բողոքոյ, որ արագ արագ եհաս յականջս խոհեմագոյն կարդինալին Սոփրեդի[3], և կոչեալ զընկերն՝ զիջուցին զվճիռն խուճապական. և ոչ այսչափ միայն, այլ գումարեալ յամսեան սեպտեմբերի խառն ժողով 'ի Պտղոմայիս քաղաքի՝ կոչելով զԹագաւորս Երուսաղեմի և Կիպրոսի և զայլ աւագանին, և ընկալեալ զդեսպան Լեւոնի Կոստանց Կամարտիաս, զոր և ազգական իւր գրէ Լեւոն, և զկարգապետս ասպետացն, համոզեր եղև և արար հաշտութիւն ընդ Տաճարականացն և ընդ Թագաւորին Հայոց։ Վասն որոյ և իրաւամբք 'ի թղթին՝ զոր յետ իրացս եղելոց՝ գրեալ է Լեւոնի առ Իննովկենտ, գովէ զՍոփրետոսի խոհականութիւնն, և զՊետրոսի հակառակն. իբրու զի ոչ միայն ոչ ուղիղ դատէր, այլ և Նկրտէր իմն սարտուցանել զինքն յաթոռոյն Հռովմայ[4]. այլ ինքն կալոց մնալոց էր սերտ և հաւատարիմ. վասն որոյ և խնդրէր մի ևս զայնպիսի ոք առաքել առ ինքն Նուիրակ։ Գրեաց և Յովհաննէս կաթողիկոս, Նախ շնորհակալելով վասն ընծայիցն, և ապա զժողովյն, ապասելով քննութեան Քահանայապետին։

Յետ խաղաղելոյ գումարելոցն 'ի Պտղոմայիս՝ զխիռո Թագաւորին Հայոց՝ վասն բանի ժողովակին Անտիոքայ, ոչ կարելով հնարս գտանել իրաւախոհութեան ընդ Նա և ընդ կոմսին Տրիպօլեայ, չուեցին գնացին 'ի Կ. Պօլիս. իսկ սոքա սկսան վերստին մաքառիլ պնդագոյնս ևս, յետ առ վայր մի 'ի բաց կալոյ Լեւոնի՝ 'ի շնորհս երեսաց Քահանայապետին. խաղմն գրգռեաց անդրէն և զանզուսպ ոգի Տաճարականացն, որոց հաշտութիւն առ վերին երեսս էր եղեալ, և առ փոքր փոքր ճարակեցաւ ընդարձակագոյնս, երկպառակելով և ժողովրդոց և սահմանակից պետութեանց 'ի մի կամ 'ի միւս կողմն։ Զայս պարզաբար յայտնէ թուղթ մի Իննովկենտեայ, զոր՝ ողբալով գրէր յայնմ ժամանակի 'ի յորդոր Փիլիպպոսի Աւգոստեայ Թագաւորի Փռանկաց՝ յաղատութիւն Սրբոյ երկրին. «Ի լրումն, ասէ, տագնապիս և ցաւոցս, ահա
» ընդ կոմսն Տրիպօլսի և ընդ Թագաւորն Հայոց՝ որք վի-
» ճին վասն Անտիոքայ իշխանութեանն, այնքան զօ-
» րանայ հակառակութիւն, և այնքան բուռն մղի պա-
» տերազմն, զի և աւի մի մարդկան մնացելոցն յերկրին,
» գրեթէ յերկուս բաժանեալ են բանակս. քանզի Տա-
» ճարականք զկոմսին կողմն ունին, Հիւրականք զԹա-

1 Թուղթք Իննովկենտեայ, Է. ճհթ։

2 Թուղթ Լեւոնի, յամի 1204։ — ՀՈՒՐԴԷՐ, Ը։

3 Լեւոն 'ի թղթին առ Պապն, «Ի բողոքել մեր առաջակայէս 'ի »լսելիս ձեր, ասէ, ջանացան փոխել զմրրիկն 'ի օդս»։ Que enim cum ad notitiam D.ni Sophredi Cardinalis et Legati devenisset, moleste tulit, et, habito consilio cum D.° Petro collegato suo, ad se accedente, quia instantissime ad audientiam vestram appellabamus, procellam in auram, consilio D.ni Cardinalis, convertere studuerunt.

4 Quamquam D. Petrus Cardinalis ab ea (Romana Ecclesia) nos eliminare laboret.

» զաւորին. Անտիոքայ ժողովուրդն՝ զհետ երթայ կոմ-
» սին, պատրիարքն՝ զհետ կուսակցաց թագաւորին. որ-
» դին Սալահէտտինի՝ որ Հալպայ սուլտանն է՝ թուի
» ձեռն տալ Տրիպոլսեցւոյն, այլ ընդդէմ յառնէ Նմա
» տէրն Նեֆինայ [1] »: Նշանակելի է, զի որպէս 'ի թղթի աստ և յայլս, Քահանայապետն և այլք՝ զՊեմունդ միշտ կոմս Տրիպոլսի կոչեն, և ոչ երբէք Բրինձ Անտիոքայ. ճանաչեն ուրեմն մերթ լռելեայն և մերթ յայտնապէս՝ զիրաւունս մանկանն Ռուբինի և զխնամակալի Նորա:

Վասն հակառակութեանն ընդ Տաճարականսն՝ գրէր թագաւորն Հայոց առանձին թղթով առ Քահանայապետն, պարզագոյն ևս բողոքելով ընդդէմ Պետրոսի կարդինալի. զի մինչդեռ ինքն ըստ պայմանաց Նուիրակին ամփոփեալ էր զձեռն, Նոքա միաբանութեամբ ոչ միայն Անտիոքեայցն, այլ և այլազգենից՝ այրեցին զտաղաւարսն որ զԿաստոնիւ (Tuguria nostra de Gastim), վասն որոյ և ինքն վրէժխնդիր եղև. և խնդրէր դատաւորս կարգել զՍոփրեդոս, զպատրիարքն Անտիոքայ, զԹագաւորն Երուսաղեմի և զԿարգապետ Հիւանդանոցին, զգիտակս ամենայն եղելոցն [2]: Բայց Իննովկենտիոս՝ որ զամենայն կամէր որոշակի դատել և վճռել տիրաբար, թուի թէ չէր բոլորովիմբ 'ի վերայ հասեալ իրաւանց ժառանգութեան Ռուբինի, որպէս և յայտնէ 'ի թղթի ուրեմն. վասն որոյ և յանձնէր Նուիրակացն խնամով քննել զիրսն և զիրաւունս. յետ առաջնոցն դարձեալ ('ի 5 ամսեան մարտի, 1205) Նոր քննիչս և դատաւորս կարգելով երկուս Պարոնս, զՊերդոլտ և զՖորավալլէ [3], և երկուս վանահարս՝ զԼուչետիոյ (Lucedio) և զԹաբոր լերին (de Monte Thabor) [4], մեղադրելով զնախորդ Նուիրակսն, զի թերակատար թողեալ զգործն՝ անապարեցին երթալ 'ի Կ. Պոլիս, ուր չէր Նոցա հրամայեալ [5]. արդ պատուիրէ Նորոցս՝ երթալ Նախ յորդորել զդիմամարտսն՝ խիկևխիկ զինադուլ առնել. ապա տալ Նոցա պայման ժամանակի ամիսս երիս՝ իրաւախոհ լինելոյ. յետ այնր, եթէ ոչ յաջողեսցին, կամ տալ վճիռ որպէս և դատին, կամ յինքն ապաստան առնել զիրսն. և որ ոչ անսայցէ՝ ընդ բանիւ առնել զնա, նա և աշխարհական զօրութեամբ քրիստոնէից պատուհաս 'ի վերայ կապել [6]: Զայսոսիկ ծանոյց թղթով 'ի նմին աւուր և Լեւոնի, ըստ առաջնոյն՝ սիրով և պատուով գրելով, և ծանուցանելով՝ զի գրեալ էր և առ թագաւորն Երուսաղեմի և առ երկոսին կարգս ասպետաց և ամենայն քրիստոնէից երկրին, ձեռն տալ այնմ կողման որ հնազանդիցի պատուիրանաց իւրոց, և ընկճել զանհնազանդն [7]: — Փոյթ մեծ էր Իննովկենտեայ բառնալ փութով և խաղաղութեամբ զխռչս զայս, որպէս և յայտնէր 'ի թուղթս իւր առ այլս, զի խափան լինէր գործոյ խաչակրութեան և պատերազմին ընդ այլազգիս, յոր հանապազ հոգայր և հնարէր: Սակայն և 'ի Նոսին իսկ խաչակիրս, որպէս բազում և յայլ Նուագս, չկայր սերտ միաբանութիւն. և ոմանք 'ի Ֆլանդրացւոց, որք բազմութեամբ և վաթսուն և վեց Նաւուք եկեալ էին յայսմ Նուագի, գժտեալ երբեմն (1203) թողին զբուն բանակին 'ի Պտղոմայիս, և եկին առ Լեւոն՝ ձեռն տալ Նմա ընդդէմ կոմսին, յորս գլխաւորք էին Յովհան de Neele [8], և փեսայ Սահակայ Կոմնենոսի՝ երբեմն իշխողին Կիպրոսի. այլ յետոյ լուեալ զի ընկերք Նոցա պատրաստին 'ի պատերազմ ընդդէմ այլազգեաց՝ յետս դարձան:

Գուշակի 'ի Նախ եղելոցն զի յայսմ ևս Նուագի տեղի տայր Լեւոն Նուիրակացն. իսկ կոմսն յամառեալ սալացեալ մնայր. և գիտելով զի ոչ կարասցէ զդէմ ունել միաբանելոց իշխանաց ընդ Լեւոնի, խորհեցաւ խորհուրդ խորամանկ՝ հնարել զերծանել 'ի քաղաքական իշխանութենէ Քահանայապետին: Լուեալ զառումն Կ. Պոլսի և զամբառնալ Պաղտուինի Ֆլանտրացւոյ 'ի գահ կայսերական, ել գնաց գաղտ 'ի Պտղոմայիս՝ առ տիկին Նորին Մարիամ, և 'ի ձեռս Նորա՝ իբրև փոխանորդի կայսեր՝ երդուաւ հպատակութիւն, ըստ աւատական օրինաց, որով դատ իւր այնուհետև ձգիւր յատեան կայսերն. և դարձաւ՝ ոչ ումեք առ ժամն 'ի վեր հանելով զբանն. մանաւանդ զի և դշխոյն մինչ չև պսակեալ թագիւ՝ դագաղաւ տարեալ եղև 'ի Կոստանդնուպոլիս. († 29 ամսեան օգոստոսի, 1204) [9]:

Որպիսի ինչ եղեն ելք բանախօսութեան և դատի չորից Նորոց Նուիրակաց Քահանայապետին, ոչ յայտնեցաւ մեզ, վասն պակասելոյ թղթոց Դիւանաց Նորին, (յորոց վերագրեալքդ ծանուցան), յերկոսին ամսն 1205-6. ոմանց թուեցաւ թէ 'ի նմին յառաջնում ամին (1205) եմուտ Լեւոն բռնութեամբ յԱնտիոք. այլ հաւանագոյն է, թէ զիջանելով 'ի բանս Նուիրակացն, (զի կամէր միշտ հաճել զառաքող Նոցին, կամ յառտնին հոգս պարապեալ), թոյլ արար առ փոքր մի, և յայնմ ժամանակի կոմսն՝ փոխանակ ամոքմամբ յինքն յանկուցանելոյ զԱնտիոքացիսն՝ ստիպէր խստութեամբ ուրանալ իսպառ զիրաւունս ժառանգութեան եղբօրորդւոյ իւրոյ. և այսու առաւել ևս ուծացուցանէր յիւրմէ զողջախոհսն, մանաւանդ զուխտ եկեղեցւոյն և զգլուխ Նոցին զպատրիարքն, որոյ և հպատակ էր ինքն կոմսն ըստ աւատական հրա-

1 Նեֆին՝ բերդ հզօր էր, երկու փարսախաւ հեռի 'ի Տրիպօլեայ, 'ի կատար բլրի, որոյ միան ցարդ աւերակք առ Անֆէ գիւղիւ: — « Ad cumulum autem majoris timoris et doloris accedit, quod inter Comitem Tripolitanum et regem Armeniæ qui pro Antiocheno Principatu contendunt, tanta viget discordia, tantaque geritur guerra, ut ille pugillus hominum, qui remansit in terra, quasi totus sit divisus ad pugnam. Nam Templari favent Comitem, et Hospitalarii favent Regi: Antiochenus populus sequitur viam Comitis, et Patriarcha prosequitur partem Regis. Filius autem Saladini qui est Soldanus Aleppiæ, Tripolitanum adjuvare videtur, sed eumdem impugnat dominus de Nefin? (Denefin տպագրեալ). — Acta Innoc. VIII. 125.

2 Բայնալտի, 1205, ԼԳ: — Թուղթք Իննովկ. Ը. ՃԺԹ. ՃԻ:

3 Պէսպէս գրի անուն տեղւոյս Foravalle, Fornivall, Fornivalle, Furnivalt, Firruallis.

4 Զի էր 'ի լերինն յայնմիկ վանք Կիստերսեան Բենեդիկտեանց:

5 Առանձին թղթով (12 յուլ. 1205) զնոյն բան մեղադրանաց գրէր և առ կարդինալն Պետրոս:

6 Թուղթք Գ Իննովկենտեայ, Ը. Ա:

7 Թուղթք, Ը. Բ:

8 « Iohan de Neele ala sejourner en Ermenie, et fu avec le roi d'Ermenie au siege qui fu devant Antioche. La furent veues ses banieres sur le mur d'Antioche, si come aucunes gens dient; dont il en ot grand blasme en la terre d'Outre mer, que si prudhome, come il etait ne deust mie estre en l'aide dou roi d'Ermenie contre le prince d'Antioche ». — Eracles, XVIII. 6.

9 ՀՈՒՐԴԷՐ, Ը. ըստ Ալպերիկոսի:

հանգաց, նաև սան էր նորին. միանգամայն և առ 'ի զղջմ ունել Լեւոնի՝ ջանայր յանկուցանել յինքն զԳե- նուացիս, շնորհելով նոցա ազատ վաճառականութիւն յիշխանութեան Անտիոքայ, և վարձելով 'ի նոցանէ ե- րիս բերդանաւս 'ի պէտս ծովամարտի կամ ասպատա- կութեան, 300 մարտիկս և 3000 բիզանդ ոսկի 'ի փոխ[1]։ Բայց Անտիոքեայցն ոչ ևս հանդուրժեալ զզուանաց նո- րին և տառապանաց սովոյն և արգելանաց, զի ոչ էր բար- ձեալ Լեւոնի զպաշարումն քաղաքին, աղերսաւորս առա- քեցին առ նա՝ գալ և զօրինաւոր տէր իւրեանց՝ զմանուկն Ռուբէն՝ հաստատել յաթոռ իշխանութեանն։ Աստանօր այլ իմն փաստ հաւանական ընծայէ մեզ պատմիչս մեր արքունի, թէ և անհամաձայն այլոց, այլ թերևս նշոյլ նոր ծագեսցէ պատմութեանս Անտիոքայ. զի յայսմ (1206) ամի ասէ վախճանեալ զծեր Բրինձն Պեմունդ Գ, զոր արևմտեայ պատմիչք հասարակօրէն և հաւանօրէն հա- մարին յամին 1201, ըստ որում և մեք նշանակեցաք 'ի վեր անդր. և այսպէս յարմարեալ յերիւրէ մերս՝ զկարգ պատ- մութեանն, որոյ հետևորդն համաձայնի արևմտեայց. « Ի » Թուին ՈԾԵ մեռաւ Բրինձն Անտիոքայ Պէմունտն, և » նստաւ 'ի տեղի նորա որդին իւր՝ որ էր միականի, և » էր կոմս Տրիպօլսոյ. և առաքեաց առ նա Թագաւորն » Լեւոն և եցոյց զգիր պայմանի հօրն իւրոյ, զոր արա- » րեալ էր Թագաւորին, վասն ժառանգութեան տղայի » աւագ որդւոյն իւրոյ, զոր գրեցաք. և նա ոչ առ յանձն » ընդունել զգիր պայմանին, և ոչ կամեցաւ կալ յիրա- » ւունս. և դարձեալ առաքեաց Թագաւորն, և եցոյց » պատրիարգին Անտիոքայ զնոյն գիր և զիրաւունս իւր. » և պատրիարգն վկայեաց իրաւանց Թագաւորին. այլ » կոմսն ոչ առ յանձն»։ Ցետ այսորիկ յիշէ զԹշնամու- թիւն նորա ընդ պատրիարքին և զբանադրանսն առ 'ի նմանէ, զբանտելն զնա, և զհակառակութիւն Լեւոնի, այլ ոչ զմուտս սորա, որում վկայեն արտաքինքն և Թուղթք իւր իսկ Թագաւորին[2]։ — Արդ եկն սա բազմութեամբ զօրաց, բայց անվնաս և անարգել եմուտ 'ի քաղաքն (1206). ընդ առաջ ելին նմա ոչ միայն եկեղեցականքն՝ այլ և յոլովք 'ի պարոնայց և յասպետաց, և մեծաւ շքով մուծին 'ի մայր եկեղեցին՝ 'ի Ս. Պետրոս. ուր եր- դուաւ Ռուբէն պատրիարքին՝ զօրինական մեծարանսն, և ընկալաւ 'ի նմանէ զԴրօշն կամ զՆշանն տիրական. և



222. Անտիոքեան դրամ Տիգրանայ Արշակունւոյ.

223. Անտիոքեան լատինագիր դրամ Լեւոնի.

Պարոնայքն երդուան նմա 'ի սուրբ աւետարանն, հաւա- տարիմ հպատակութիւն և պաշտպանութիւն յամե- նայն ժամանակի. ապա համախումբ բազմութեամբն և երաժշտական դասուք պարս յօրինեալ, տարան նստու- ցին զԹոռն նախկին տեառն իւրեանց (Պեմունդի Գ) զպատանեակն Ռուբէն, անուանելով Բրինձ Անտիոքայ. և հանդարտեաց առ վայր մի իշխանութիւնն և ժողո- վուրդն, շնորհս ունելով Լեւոնի, որ ոչ միայն օգնու- թիւն, այլ և ընծայս մեծամեծս պարգևեաց պարոնայցն և ժառանգաւորաց եկեղեցւոյն. բաշխեաց առատապէս տուրս և 'ի վանորայս Սեաւ լերին. Թոյլ ետ պատրիար- քին ձեռնադրել նոր եպիսկոպոս (լատին) վասն Տար- սոնի եկեղեցւոյն, հաստատել եպիսկոպոս և ևս 'ի Մա- մեստիա, կարգելով նոցա ռոճիկ յարքունուստ. դար- ձոյց 'ի վանս Ս. Պօղոսի զԱղբիւրն Կաստոնի[3], ամե- նայն կալուածովք նորին. նոյնպէս և առ Տաճարա- կանս՝ զբերդն Կաստոն և զկալուածսն գրաւեալս[4], և առ այլս՝ զյափշտակեալսն յինքենէ և 'ի կոմսէն. և դարձաւ փառօք յերկիր իւր։ — Ցայսմ նուագի Թուի հատեալ Լեւոնի զդրամն՝ լատին գրով և նշանակաւ խաչի դրամոց Անտիոքայ. բայց ոչ յանուն սորին՝ այլ Հայոց Թագաւոր վերագրելով որպէս 'ի դրամս Սիսուանայ, և լռելեայն իմն ծանուցանելով զկարողութիւն իւր և զյաղթանակ. զարմանալի իմն նմանութեամբ և հարուստ հեռաւորու- թեամբ ժամանակի, յետ 1300 ամաց նախնոյն իւրոյ Տիգրանայ Արշակունւոյ, որ նմանապէս հրաւիրեալ և

1 Ոմանք յառաջնում նուագի պաշարմանն Անտիոքայ՝ առեն զայ- սորիկ ընկալեալ կոմսին, և նոքօք վանեալ զԼեւոն. այլ ոչ գիտեմ զիարդ ապերախտք գտանէին սոա Գենուացիք՝ որք առկաւ ամօք յա- ռաջ ընկալեալ էին 'ի նմանէ ազատագիր վաճառականութեան յեր- կրի նորա, և զոր յետոյ ևս յամի 1215 վերստին հաստատեաց Լե- ւոն՝ առաւելագոյն ևս շնորհօք։

2 Թուղթ Լեւոնի, առ Րայնալտեայ, յամի 1205. ԼՋ-Թ։

3 Որ յիշեցաւ յէջ 455։

4 Castellum de Gastum, quod super paganos acquisivimus et propter guerram nunc usque detenuimus, restituimus Templarijs, et facti sumus amici ad invicem. — Թուղթ Լեւոնի առ Իննովկենտիոս Գ, որ է 'ի շարս թղթոց սորին, Ժ. ՄԺԴ։

զինավառեալ՝ կալաւ զտէրութիւնն Սելեւկիացւոց և զմայր քաղաքաց նոցին զԱնտիոքս այս. զոր և կերպարանէ 'ի դրամս իւր պատկերաւ Որոնդէս գետոյ, շրջափակեալ յունագիր անուամբ իւրով, որպէս տեսանի 'ի սակաւագիւտ յայսմ դրամի (Թիւ 222)[1]։ Զայս ամենայն ծանոյց Լեւոն գրով առ Քահանայապետն, վկայս ցուցանելով զասպետս երկոցուն կարգացն. և խնդրելով զի հաճեսցի առ պատուական ունել զպատրիարքն՝ զպատճառ յաջողութեան իրացս, պաշտպանեսցէ Թոռին իւրում, և փութասցի առաքեսցէ օգնութիւն ընդդէմ բարբարոսաց, շնորհելով ներողութիւն մեղաց՝ եկելոցն յօգնութիւն իւր։

Սակայն և ոչ զայս նուագ տեւեաց յերկար խաղաղութիւն տառապեալն Անտիոքայ. քանզի ղօղեալ կայր կոմսն 'ի բերդն, որ էր յոյժ ամուր և դժուարըմբռնելի. և ոչ կարէր Լեւոն ընդ երկար դեգերել անտանօր, և ըստ օրինի արուեստին պաշարել և պնդեալ պահել, առ որ և մեծի բազմութեան զօրաց պէտք էին։ Արդ 'ի հեռանալ նորա յերկիր իւր՝ ոստուցեալ կոմսին յորջոյ անտի, և մոռացեալ զպարտս որդեգրութեանն և զհպատակութեան և զմեծի սրբազան աստիճանի պատրիարքին, յաջողեաց դարձեալ դրժանօք յինքն դարձուցանել զՏաճարականսն և զայլս վարձկանս, և նոքօք մարտուցեալ յաղթեաց քաղաքացեացն. կալաւ զհայրապետն և զերկոսին եղբօրորդիս նորին և էարկ 'ի բանտ տառապանաց. կողոպտեաց և զսպասս սրբութեան եկեղեցեաց նորին, թող թէ զինչս հաւատարմաց Բրնձին տղայոյ, զոր զերծուցին նոքա տիրասիրաբար և հասուցին առ Լեւոն։ Ցայնժամ՝ ըստ օրինաց, կամ վաղագոյն եւ՝ ըստ մերոյ պատմչին, «արար պատրիարգն զնա (զկոմսն) » ընդ բանիւ. և հրամայեաց ոչ հարկանել զանգակ, և » ոչ մատուցանել պատարագ, և ոչ թաղել զմեռեալ. և » նա ոչ հաւանեցաւ. ապա յետ ամենայնի յանդգնեալ՝ » մխեաց զձեռն իւր 'ի պատրիարքն և եդ յարգելանս, » և նեղէր սովով և ծարաւով. և առաքէր առ նա և ասէր. Վկայեա վասն իմ՝ որ ես եմ իրաւամբք տէր Ան» տիոքայ, զի ազատեալ ապրեսցիս. և նա ոչ առ յանձն » ամենեւին, մինչև մեռաւ յարգելանսն՝ 'ի սովոյ և 'ի » ծարաւոյ. և ոչ խոստեցաւ սուտ։ Եւ յայնմհետէ եղև » խռովութիւն մեծ ընդ թագաւորն և ընդ բրինձն »։ Փոանկ պատմիչն չարայարող Տիւրացւոյն, (ԼԱ. Գ), ասէ, կերակուր չափաւոր տայր պատրիարքին, այլ ջուր ամենեւին ոչ, մինչև ստիպիլ նորա առ ծարաւոյ ըմպել զիւղ լապտերին և մեռանել։

Ժամանեաց դարձեալ գոյժն 'ի դուռն Քահանայապետին, և վրդովեցոյց, զի մինչ նա ամենայն փութոյ պնդութեամբ 'ի խաչակրութիւնն և յազատութիւն Երուսաղեմի ճեպէր և յորդորէր, ոչ դադարէին տագնապք յԱնտիոքայ. գրեաց անդրէն ('ի 6 փետր. 1207) առ պատրիարքն Երուսաղեմի՝ իբրև առ նուիրակ Աթոռոյ երկրի, ջանալ ամենայն իրօք խլել խաղաղել զխէթն՝ որ ընդ Լեւոն, (զոր ամենասիրելի որդի իւր կոչէ) և ընդ կոմսն և համախոհս նորին Տաճարականս. զերծուցանել մանաւանդ զեղբայր իւրեանց զպատրիարքն Անտիոքայ 'ի բանտէն. և եթէ ընդդէմ ինչ դարձցի կոմսն, կաշկանդել եկեղեցական կապանօք, որովք արդէն կապեալ բանադրեալ էր զնա և զկուսակիցս նորա՝ հայրապետն բանտարկեալ։ Իսկ Տրիպոլսեցւոյն 'ի բաց մերկացեալ զյանուհետև զամենայն պատրուակ պատկառանաց, զթոյ և խղճի, յանդգնեցաւ ոչ միայն և եւս պնդել զպահ



224. Դրամ Դ Պեմունդի.

արգելանի նորա, այլ և՝ որպէս երբեմն առ ազատանալ 'ի քաղաքական տեսչութենէ Պապին՝ զկայսրն ընտրեաց իւր գերիշխան, և զարդիս փոխանակ իւրակրօն լատին պատրիարքի՝ թոյլ ետ Յունաց կարգել յինքեանց պատրիարք Անտիոքայ[2]. որ և ջանաց որսալ զոմանս յուխտէն Լատինաց, և զայլսն ընդ բանիւ արար. ընդդէմ որոյ, պատուիրեաց Պապն՝ նորով կոնդակաւ (4 մարտի, 1208), առ նոյն նուիրակ իւր, մերժել զապօրէն եկամուտն 'ի գաւառէն, և զհաւանեալս նմին անդարձ՝ հանդերձ կոմսիւն՝ բանադրել։ Այսպէս երկոքին կողմանք մարմնաւոր և հոգևոր զինուք ընդդէմ իրերաց մաքառէին. և 'ի յերկարել հակառակութեանն՝ պատրիարքն Պետրոս առաքինօրէն վճարէր զկեանս իւր 'ի բանտին, իշխեմ ասել թէ և վկայօրէն, 'ի սկիզբն 1208 ամի[3], հաւատարիմ մնալով իրաւանց արդարութեան։ — Ի հնչել համբաւոյն՝ ոչ կարէր Քահանայապետն չողբալ դառնապէս ('ի կոնդակին որ յ'12 յուլիսի, 1208)· «Ո՜վ ազ» նուականդ Անտիոք, քաղաք ամենավայելուչ, և գոգջիր » ուրախութիւն ամենայն երկրի, քանի՜ չարաչար անչքա» ցեալ երևիս վասն այսքանոյ մեծի եղերանդ. քանի՜ ան» արգաբար շլացար այդու գծուծ գործով. ո՞ւմ նմա» նեցուսցուք զքեզ. կամ ո՞ւմ կարասցուք հաւասարել » զաղէտս թշուառութեան քո. ամենայն ազինք բողոք » բառնան ամբաստանութեանց 'ի միջի քում. զոր օրինակ » ջրհոր ցրտացուցանէ զջուր իւր, այնպէս ցրտացուցեր » զզինուորութիւն? քո[4] »։ Յետ այսպիսեաց և որ սոյին սակի բանից և մեղադրելոյ զկոմսն, պատուիրէ նուիրակին՝ երթալ կարգել օրինաւոր յաջորդ վախճանելոյն։

[1] Տիգրանայ դրամք և կրկնադրամք արծաթիք և պղնձիք գտանին ցարդ յոլովք․ բայց մեծայարգի է պատկերեալս տասնօր՝ ձևով աշխարհաւանդ երիզակի Թագին, որ ոչ որպէս զայլոց բազմաց անծալ և համակ է, այլ՝ որպէս տեսանիդ՝ հանգոյց հանգոյց կամ մէջ ընդ մէջ ոլորեալ․ զայս՝ նշանական իմն համարի առացող դրամոյն Հայահաւաք հնախոյզն։ — Իսկ Լևոնի դրամն արծաթապղնձի (Billon), որ միակ ծանուցեալ կարծի, պահի 'ի Թանգարանի ազնուականի ուրումն Գերմանացւոյ։

[2] Թուղթք Իննովկ․ Ժ․ Թ։

[3] Թուղթք Իննով․ ԺԱ․ ՃԶԱ։

[4] « O nobilis Antiochia, urbs perfecte decoris, et terræ quasi gaudium universæ, quam graviter esse cerneris per tam grave ignobilitata flagitium, quam turpiter per tam turpe facinus offuscata! Cui comparabimus te, vel cui tuam possumus miseriam adequare? Omnis gentis enim calumnia in medio tui est. Que cisterna facit frigidam aquam suam, ita militiam tuam frigidam reddidisti». — *Epist. Innoc.* XI. cx.

Եկեալ սորա գումարեաց զուխտ եկեղեցւոյն, և ընտրեցին պատրիարք զՊետրոս (Բ) եպիսկոպոս Իւպորենեայ (Yporiensis), զոր և հաստատեաց Պապն՝ սլլով կոնդակաւ (5 մարտի, 1209)[1]. յորում դարձեալ պատուիրէ նուիրակին՝ ջանալ հնարել հաշտութիւն, կամ զինադուլ առնել ընդ Լևոն և ընդ կոմսն և Տաճարականս. յորդորել զառաջինն՝ զի դարձուսցէ առ սոսա՝ զզրաւեալ կալուածսն ինչ. և վերջնոցս՝ բանադրանս ևս սպառնալ՝ եթէ ոչ հանդարտեսցին. զնոյն և առ կոմսն նշանակէ առանձին թղթով (26 մայիսի, 1209)[2], եթէ ոչ ընդունիցի զնորընտիր պատրիարքն և յետս դարձուսցէ զկողոպուտ եկեղեցեաց և եկեղեցականաց։ Յայս թուղթքս չիք բան սպառնական Լևոնի, այլ և կոչէ զնա Պայծառափայլ Թագաւոր Հայոց (Illustris Rex Armeniæ), իսկ զկոմսն անմակդիր որդի միայն կոչէ։ Գրեալ ևս էր առ սա՝ ջանալ դարձուցանել առ պատրիարքն զատ յոյլոց՝ զմեծ և կարևոր բերդն Հինից? (Castrum Cursarii), զսեփականն աթոռոյ նորին. և զի բնակէին 'ի նմա և Հայք և Ասորիք իբրև լինք նորա, ուրոյն գրեաց և առ սոսա զնոյն պատուէր[3]։

Բայց քան զայսոսիկ կարևորագոյն է թուղթն՝ զոր յետ աւուրց (12 յունիսի, 1209)[4] գրեաց Իննովկենտիոս առ Լևոն. մի 'ի թղթոց՝ զոր մարթ է օծեալս շնորհօք և հրաշազարդս ասել. յորում՝ սէր առ որ գրէն, իմաստութիւն, արդարասիրութիւն և հնարք հասարակաց օգտի՝ հաւասար փայլեն։ Յայտ է զի յետ նուաճելոյ կոմսին զԱնտիոք և հալածելոյ զՌուբէն, թէպէտ և ոչ մխեցաւ Լևոն 'ի ներքս 'ի քաղաքն, այլ անդուլ պատերազմաւ տագնապեցուցանէր զայն, յաղարտ վարելով զսահմանսն, մանաւանդ յայսմ ամի (1209). որպէս նշանակէ և պատմիչ մեր. « Ի սոյն ամի յարոյց պատերազմ
» մեծ՝ թագաւորն 'ի վերայ Անտիոքայ, և աւարեալ այ-
» րէր զամենայն գեղօրայսն. և կոտորէր, ոչ զմարդ՝
» այլ զայգիս և զծառս նոցա. և զայս առնէր 'ի բազում
» ամս և 'ի ժամանակս. և խնդրէր իրաւամբք և պատե-
» րազմաւ՝ զհայրենիսն տղայ Ռուբենի. և ոչ կարաց ա-
» ծել 'ի հաւանութիւն զմիականի կոմսն. և մեծաւ նե-
» ղութեամբ նեղէր զԱնտիոք յամենայն ամի, առանց
» ձանձրանալոյ ». միանգամայն և գանգատէր առ Քահանայապետն զկոմսէն և զասպետացն կուսակցաց նորին։ Արդ գրէ Իննովկենտիոս առ թագաւորս մեր, խիթալով եթէ Անտիոք առիթն վիճի ընդ երկոսին՝ գուցէ առաւելագոյն ևս չարի լիցի նոցա, 'ի Սառակինոսաց յափշտակելով, և անբաւ վնասու քրիստոնէից. «Դու, ասէ, նաև թղթովք նորընտիր արքեպիսկոպոսին Տարսոնի և Տևտոնեան ասպետաց՝ յամենայնի ճգնիս արդար զքեզ և իրաւ ցուցանել. բայց ոչ ամենևիմբ նոյնպէս դատին եկեղեցական և քաղաքական օրէնք. զի ցորչափ կոմսն 'ի ձեռին ունի զտէրութիւն քաղաքին՝ ոչ է իրաւացի առանց դատաստանի մերժել զնա. և ոչ քեզ օրէն է միանգամայն և զինուք և օրինօք պայքարիլ[5]. և զայս ոչ վճռաբար ասեմ քեզ, որդեակ ամենասիրելի, այլ յետ լսելոյ զբազմաց վճիռ. այն զի և գանգատի կոմսն՝ եթէ ընդէ՞ր ոչ բանադրի Լևոն՝ անդադար մարտ մղելով, մինչ ինքն պատրաստ է սնսալ դատի և վճռոյ արդարութեան։ Իսկ ինքն պատշաճ դատի յորդորել զկոմսն՝ զի յանձնեսցէ զբերդն 'ի ձեռս պատրիարքին Պետրոսի, որ այր զգօն է, արդարակորով և անաչառ, և ասպետքն Հիւրականք և Տաճարականք պահ ունիցին, և ռոճիկ տացի նոցա յերկոցուն ևս կողմանց. և մինչև 'ի գլուխ ելանել դատաստանին՝ հարկ է և քեզ զինադուլ առնել. այլ և առ 'ի լռեցուցանել զհակառակութիւն Տաճարականաց՝ տալ նոցա զԿաստոն բերդ, զոր վաղագոյն առ Աղեքսանդրիւ Քահանայապետաւ[6] կալեալ ունէին. և մինչև թէ ոչ ունիցին զայն վերստին՝ ըսպառնան թողուլ լքանել զամենայն և 'ի բաց ելանել 'ի Սուրբ երկրէն, որում կարեն մեծապէս օգտել։ Գանգատիս, զի մարտնչին ընդ քեզ, և դու զնոյն գործես. զի բռնութիւն՝ բռնութեամբ վանի. — պաշտպանեն զԱնտիոք, քանզի 'ի սահմանս նորին են կալուածք իւրեանց. այն զի այլ ինչ է մարտնչել 'ի պաշտպանութիւն և այլ 'ի վնասողութիւն[7]։ Եւ մի կարծիցես եթէ զայսոսիկ թելադրիցեմ քեզ առ շնորհուկս ինչ կոմսին՝ որ անիրաւութեամբն առ հայր իւր՝ պատրիարքն՝ անարժան գտաւ շնորհաց, կամ Տաճարականացն՝ որոց անկ էր փոխանակ ընդ քեզ կռուելոյ՝ սրբութեան կրօնից իւրեանց կալ պատկառ։ Արդ վասն այսոցիկ ամենայնի խրատ տամ Բարձրութեանդ և խանդակաթ սիրոյ գրկօք փարելով՝ յորդորեմ 'ի Տէր, յօժարութեամբ և բարեպաշտութեամբ ընդունել զոր ասացաքս[8], և դադարել 'ի մարտէ, թէպէտ և անհաւան գտցի կոմսն յանձնել զբերդն, մինչև աւարտեսցի դատն, առ որ՝ տացէ Տէր գտանել այր կարող իրաւադատ. որում և յանձն առնեմք՝ զհակառակող բանիցս այսոցիկ զկողմն՝ ընդ եկեղեցական կապանօք արկանել, և նեղել 'ի ձեռն բնակաց երկրին և եկաց[9] »։ — Խնդրեալն իրաւարար գտաւ այն՝ որ վեց ամք յառաջ առաքեալ էր 'ի նոյն գործ. եպիսկոպոսն Կրեմոնայ Սիկարտ, առ որ՝ և այժմ զնոյն երկրորդէր Քահանայապետն՝ կոնդակաւն 'ի 20 օգոստոսի 1210 ամին[10], յետ ընդունելոյ զդեսպանս Լևոնի, զՀեթում-Հեղի՝ երբեմն տէր Լամբրոնի և այժմ առաջնորդ Դրազարկու, զԱրշիվալտ զօրական, և զԲաւոն (Bavon) լատին լեզուի քարտուղար թագաւորին[11], յորոց ձեռս աղերսէր Լևոն՝ փութով դատ առնել իրաւանց թոռինն, զի ա-

1 Թուղթք Գ Իննովկենտեայ. ԺԲ. Ը։
2 Թուղթք. ԺԲ. ԼԹ։
3 Թուղթք. ԺԲ. ԼԸ. ԼԹ։
4 Թուղթք. ԺԲ. ԽԵ։
5 Simul non sit et armis et legibus contendendum.
6 Աղեքսանդր Գ, եկաց յառաքելական աթոռն՝ յամս 1159-1181։
7 Longe aliud sit difendere quam offendere, ac repugnare sit quam impugnare diversam. — Լևոն վասն հակառակութեան նոցա ընդ ինքն գանգատէր, բայց և ուխտ եկեղեցւոյն Անտիոքայ բողոքէր առ Քահանայապետն վասն անիրաւի գործոց ասպետացն և ամբարտաւանութեան նոցին, որք ժպրհէին անգամ ասել, եթէ արժան է բանալ ինքեանց զքաղաքս և զեկեղեցիս՝ թէպէտ և բանադրանօք փակեալք իցեն։ (Հուրդէր, Բ. 339 իտալերէն թարգմանութեանն)։
8 Monemus ergo Celsitudinem tuam, quam sincere dilectionis brachiis amplexamur, et exortamur in Domino, etc.
9 Si quam vero partium tam necessario et sano consilio noluerit acquiescere, per censuram ecclesiasticam, et tam per indigenos quam etiam peregrinos eam præcipimus eserceri.
10 Թուղթք Իննովկ. ԺԳ. ՃԻԳ։
11 Որք երթալոց էին և 'ի Գերմանիա, առ Օթոն կայսր։

դատեալ 'ի հոգոց անտի՝ դարձուսցէ զզէնս իւր 'ի վերայ այլազգեաց թշնամեաց քրիստոնէից։ — Այսոցիկ իրազեկ առնէր Պապն զպատգամաւոր իւր. պատուիրելով նմա երթալ և առնուլ ընդ իւր երկուս ևս ընկերս խոհականս անկողմնատարս, ընտրեալս յերկոցուն վիճողացն, և վճռել յոր երեքին կամ երկուքն միաբանիցին. իսկ եթէ չհաւանիցին վիճողքն՝ կոչել զպատրիարքունս Երուսաղեմի և Անտիոքայ, և նոքօք աւարտել զքննութիւնն և զվճիռ՝ անդարձօրէն և ընդ բանադրանօք. որում եթէ ըմբոստացեալ միոյն ստունգանեսցէ՝ ընկճել զայնպիսին բուռն զօրութեամբ բնակաց երկրին և օտարաց. իսկ եթէ դէպք ինչ անակնկալք արգել լիցին նմա կատարման գործոյս՝ յանձն արասցէ պատրիարքացն երկոցուն[1]։ — Յիշելով Քահանայապետին և զխէթ Հայոց վասն բռնի բանադրանաց, 'ի նմին աւուր (20 օգոստոսի 1210) գրէ հակիրճ թուղթ առ կաթողիկոսն և առ համօրէն ուխտ եկեղեցւոյն Հայոց, զի չունի ոք իշխանութիւն բանադրել զՀայս, բայց յայնմանէ՝ որում տացի օրինաւոր կամ յատուկ հրաման առ այն. և մի որ իշխանութիւն ևս ունիցի՝ վայրապար ընդ բանիւ արասցէ, և եթէ այսպէս առնէ՝ անվաւեր եղիցի[2]։

Որպէս յեղանակ դեսպանութեան չորեցուն նուիրակաց Պապին անծանօթ մնաց, այսպէս և երկրորդս այս, եպիսկոպոսին Կրեմոնայ. զի ոչ ևս յիշի անուն և գործ նորա 'ի յետագայ թուղթս Իննովկենտեայ և 'ի պատասխանիս նոցին. այլ յայտ այս է, զի 'ի ժամանակի գրութեան յանձնարար թղթոյն՝ պատերազմն խիստ էր Հայոց ընդ Անտիոքեայս. Ռուբէն անուամբ Բրնձի կայր յարքունիս Լևոնի, և 'ի նոյն աւուրս (սեպտ.) իբրև տէր Անտիոքայ հրովարտակ առնէր և հաստատէր զառաջին և զնոր տուրս տեղեաց՝ առ ասպետս Հիւանդանոցին, և Լևոն ստորագրէր ընդ այլոց՝ իբրև վկայ[3]։ Ի նոյն աւուրս (3 օգոստ. 1210) վաւերացուցանէր և Քահանայապետն զտուրս Լևոնի առ նոյն ասպետս[4]. այլ յետ այսոցիկ՝ յելս կոյս տարւոյն՝ ակն ունելի էր ժամանելոյ նորոյ նուիրակին կամ պատրիարքին Երուսաղեմի 'ի Հայս կամ յԱնտիոք. և 'ի դէպ է կարծել՝ եթէ եկին մին կամ միւսն, և ոչ ինչ օգտեցան, վասն երկուստեք յամառելոյ վիճողացն 'ի կարծեցեալ իրաւունս իւրեանց, կամ թէ դարձեալ դրժեաց ինչ կոմսն, և պնդագոյնս վառեաց զՏաճարականսն ընդդէմ Լևոնի։ Որ զիարդ և է՝ աներկբայ է արտմութիւն թագաւորին՝ 'ի վերայ ձիաւորացն խրոխտացելոց, և ընդ անօգուտ ժամավաճառութիւն բանագնացութեանցն, յորս միշտ զինքն տեսանելով իրաւացի, զկոմսն առաւել քան զարժանն համարէր արդարացուցեալ, նոյնպէս և զասպետսն. որք, որպէս վերագոյնդ նկատեցաք, իբրև նուիրականք ոմանք և պիտանիք 'ի գործ մարտի ընդդէմ այլակրօնից, ներողութիւն գտանէին սխալանացն. վասն որոյ տաղտկացեալ այնուհետև 'ի խօսից՝ ձեռն արկ սաստկագոյնս մղել զզէնսն, և 'ի տագնապի կացոյց զնոսա։ Հնչեաց դարձեալ բողոք նոցա յատեան Քահանայապետին. և սա ճեպեցոյց զպատրիարքն Երուսաղեմի՝ զմեծ նուիրակ իւր յԱսորիս[5], գտանել ամենայնիւ հնարս իրաւախոհութեան. այլ Լևոն՝ 'ի գալ պատգամաւորաց ասպետացն՝ ոչ ևս կամեցաւ տեսանել զնոսա և ոչ առնել պատասխանի. քանզի և պատուէր տուեալ էր զրաւել վերստին զամենայն կալուածս նոցին որ յերկրի իւրում և որ 'ի սահմանս Անտիոքայ, ընդ որս և զՊաղեղն նաւահանգիստ, յորմէ շահ մեծ էր ունկի նոցուն. և պահպանս կարգեալ յօթեվանս նոցին՝ ոչ թողոյր աղագս եղի և մտի և դարման գտանելոյ. և թէպէտ աղաչեաց պատրիարքն բառնալ զարգելն, այլ չեղև լսելի։ Յայնժամ ըստ իշխանութեանն տուեցելոյ նմա 'ի Քահանայապետէն՝ սկսաւ և սա եկեղեցական օրինօք և սպառնալեօք վարել. պայմանեաց Լևոնի աւուրս ինչ՝ կատարելոյ զառաջարկեալն. և 'ի լնուլ աւուրցն՝ կարդաց զբանադրանսն, և ծանոյց ամենայն Երուսաղեմացւոց, զի թէ ոք ձեռն տացէ թագաւորին Հայոց ընդդէմ Տաճարականաց՝ ընդ նովին նզովիւք փակիցի։ Այլ ոչ ոք գտաւ ոչ օգնական նմա և ոչ ընդդիմակաց. նա և առաւել ևս խստացոյց զտագնապ ասպետացն, 'ի սպառ նուաճեալ զամենայն տեղիս և զհասս նոցին, բաց յերկուց բերդից՝ յորս չեղև ձեռնհաս. նոյնպէս արար և 'ի սահմանս Անտիոքայ, ապականելով զագարակս նոցին՝ ուր եկեալ էին ժողովել զարդիւնսն. և յերթալ նոցա երբեմն յամրոց մի իւրեանց՝ Հայք դարանեալք 'ի կիրճս և 'ի վերայ յարձակեալ՝ զոմն սպանին և զայլս վիրաւորեցին, ընդ որս և զկարգապետն[6]։ Զայսոսիկ լուեալ Պապին՝ արժան համարեցաւ և իւրովսանն խստանալ. գրեաց առ պատրիարքն նուիրակ իւր (18 մայիսի, 1211), պատուիրել եպիսկոպոսաց կողմանցն Ասորւոց՝ հրատարակել 'ի թեմս իւրեանց զբանադրանսն. զնոյն գրեաց և առ կաթողիկոսն Հայոց. ևս և առ Յովհան թագաւոր Երուսաղեմի և առ այլս, զի գուն գործիցեն թափել 'ի Լևոնէ զառճիկ ասպետացն, կամ դարմանեսցեն զնոսա։ Պատմիչն Փռանկաց[7] ասէ, Յովհ. թագաւորի Երուսաղեմի առաքեալ յօգնութիւն Տաճարականացն՝ ձիաւորս յիսուն, առաջնորդութեամբ Ճոֆրէի Կաֆրանայ (Jofroi de Caffran) և Ամիոնի Այսի (Amion d'Ays), և տեսեալ զնոսա Լևոնի՝ դադարեալ 'ի կռուելոյ, և թողեալ զբերդն։ Սակայն եթէ ստոյգ ևս իցէ գալուստ ասպետացն՝ յետոյ ուրեմն թուի եղեալ, յորժամ ինքնին կամեցաւ Լևոն հաճել զկամս Քահանայապետին։ Իսկ զարդիս տեսեալ սորա՝ զի ընդ ասպետացն նաև զկուսակիցս նոցին Լատինս մերժեաց Լևոն՝ 'ի վիճակաց նոցին որ ընդ իւրով իշխանութեամբ, թուի կասկածեալ եթէ մի գուցէ իսպառ գրգռեալ ատելութեամբ հալածեսցէ և զուխտ Անտիոքայ եկեղեցւոյն, կամ թէ զիտելով զհովանալ նորա 'ի Լատինաց՝ համարձակութիւն առցէ այլազգին դրակից Անտիոքայ. վասն որոյ գրեաց (7 յունիս, 1211) առ սուլտանն Հալպայ Մէլիք Տահէր՝ որդին

1 Թուղթք Իննովկ. ԺԳ. ԼԳ։

2 Nullus omnino qui ordinariam vel delegatam jurisdictionem in eos vel vestros subditos non habuerit, sententiam ferre præsumat.

3 Cartulaire, 132. — Թուղթք Իննովկ. ԺԳ. ՃԺԹ։

4 Cartulaire, 114.

5 Թուղթք Իննովկ. ԺԴ. ԼԳ. ԿԴ. ԿԶ։

6 Կարգապետ ժամանակին էր Փիլիպ. մականուանեալ de Plessis.

7 Eracles, XXXI, 7.

Սալահէտտինի, զի՛ թէ և ոչ ես քրիստոնեայ, ասելով, այլ խնամով Թէարկես և սոցա, այսպէս արարեալ և Անտիոքեայց՝ մի՛ ինչ նեղեսցես[1]։

Զոր կասկածէրն Իննովկենտիոս՝ կատարեաց Լևոն փոքր 'ի շատէ. զի զսպեալ և նուաճեալ զխրոխտումն և զչարժումն Տաճարականացն, այնուհետև դիւրանայր նմա գրաւել և զԱնտիոք. և թէպէտ երդումն կռեալ և կնքեալ էր ընդ պատրիարքին՝ զինադուլ առնել, այլ 'ի վերայ հասանել նախագրելոցն դիպաց, կամ լուծեալ համարէր զայն, և կամ այլով ինչ խորագիտութեամբ հնարէր 'ի ձեռն այլոց գողանալ զտեղին, վասն որոյ այնքան աղէտք անցին, և մի՛ անձամբ երևել։ Զորպէս իրացս ցուցանէ կշտամբական Թուղթ Իննովկենտեայ առ Լևոն, տուեալ 'ի վեշտասաներորդ ամի քահանայապետութեանն, 'ի 22 փեբրուար ամսոյ. յորմէ և ստուգի[2] ոչ անձամբ եկեալ Լևոնի, այլ բազմութեամբ զօրաց առաքեալ զՌուբէն՝ նստուցանել յաթոռ իշխանութեանն[3]. որք ոչ սակաւ վնաս գործեցին՝ ոչ միայն աշխարհականաց այլ և եկեղեցականաց, կողոպտելով զարարս նոցա. և միանգամայն աւելի քան 100,000 բիզանդեաց ոսկւոյ առին աւար, (աւելի քան զմիլիոն ֆրանքաց)։ Ոչ յիշի թէ ու՛ր էր յայնժամ կոմսն, անուանեալն Դ Պեմունդ, և զի՞նչ արար։ Ի թղթի իւրում կշտամբէ Իննովկենտ զԼևոն և վասն դրժելոյ պայմանի հաշտութեանն՝ յառաջ քան զվճարել ժամադրութեանն, և վասն մերժելոյն զնորընտիր արքեպիսկոպոսն Տարսոնի, և զռոճիկ նորա՝ զօրականաց իւրոց բաշխելոյ. նոյնպէս և վասն առ ոչինչ գրելոյ զբանադրանսն՝ որ վասն յափշտակութեան ընչից և կալուածոց Տաճարականաց։ Եւ դարձեալ խրատէ, աղաչէ, յորդորէ 'ի բաց կալ յայսպիսի գնացից[4], և դարձուցանել նոցա զստացուածսն, նոյնպէս և առ պատրիարքն Անտիոքայ. իսկ եթէ դարձեալ անլուր լիցի՝ պատուէր տուեալ է պատրիարքին Երուսաղեմի և արքեպիսկոպոսին Տիւրոսի՝ կրկին ընդ բանիւ առնել զնա և զՌուբէն և զգլխաւորս 'ի խորհրդականաց նորին. նոյնպէս և առ Թագաւորս Երուսաղեմի և Կիպրոսի և առ այլ պարոնայս գրեալ է, զի զգուշասցին 'ի նմանէ և զուն գործեսցեն դարձուցանել առ ասպետսն՝ զստացուածս նոցին։ — Ի ժամանակի սաստ երեսդարձութեան Լևոնի 'ի Լատինաց՝ Թուի խստիւ արգելեալ նորա, զի մի՛ ոք յօտարաց մտցէ և ելցէ յերկիր իւր՝ առանց իւրոյ հրամանագրի, որպէս ծանուցանէ որ յայնմ ժամանակի (1211-2) եկն առ նա հիւր՝ կանոնիկոսն Վիլլեպրանտ[5]։ — Յառաջնոց թղթոցն քաջայայտ փայլէ յատուկ իմն զորով Քահանայապետին Իննովկենտեայ 'ի Լևոն, վասն միաբանութեանն ընդ եկեղեցւոյ իւրոյ, և վասն զօրութեանն՝ յորմէ ակն ունէր ոչ փոքր օգնութիւն գտանել Խաչակրաց. յայտ ուրեմն է զի բռնադատութեամբ և ոչ հաճութեամբ գրէր զայսոսիկ, որպէս և ինքնին 'ի սկզբան թղթոյն խոստովանի, ակամայ և տրտմութեամբ զլանալ նմա զառաքելականն ողջոյն և զօրհնութիւն[6]. սակայն յետ հնգից լոկ աւուրց (27 մարտի, 1213) վաւերացուցանելով զտուրս Ամուտայ բերդի 'ի Լևոնէ առ Տևտոնեան ասպետս, անուանէ զնա 'ի գրին՝ ըստ սովորականին՝ ամենասիրելի որդի իւր և պայծառափայլ Թագաւոր Հայոց, և բարեպարիշտ առատաձեռն[7]։ Անկեղծ էին և սէր և մեծարանք Լևոնի առ Իննովկենտ, զորոյ քաջ ճանաչէր ոչ միայն զգերազանցութիւն աստիճանին, այլ և զանձնականն բարուցն և մտաց. վասն որոյ թէպէտ և մինչև յընդունել զթուղթն՝ անկեալ համարի ընդ բանադրանօք, այլ ոչ յամեաց թափել զկեղտն յանձնէ, 'ի շնորհս երեսաց այնքանոյ վեհի, որում հանապազ որդի նորընծայ զինքն դաւանէր։ Աւի գրեալ թուղթս զղջականս և առ պատրիարքն Երուսաղեմի. և սա զեկուցեալ առ Քահանայապետն՝ վկայութեամբ հաւատարմութեանն, հրաման ընկալաւ 'ի նմին ամի (1213, պակասէ նշանակ ամսեանն[8]), արձակել զնա, ըստ խոստմանն իրաւախոհ լինելոյ ընդ պատրիարքին Անտիոքայ և ընդ Տաճարականաց. և արարին այնպէս պատրիարքն և Լևոն։ Բայց զխնդիր իրաւանց իշխանութեան Անտիոքայ 'ի կախ եթող. միայն մերժեաց և սուտ եցոյց զբանս կոմսին, որ կոչեցեալ 'ի պատրիարքէն յիրաւախոհութիւն ընդ Ռուբենի, ոչ միայն ասէր զինքն կայսեր Կ. Պօլսի լիճ լինել, վասն որոյ և ոչ յայլմէ առնել դատիլ. այլ թէ և կայսեր գրեալ էր առ Պապն՝ մի՛ ևս արկանել զնա ընդ եկեղեցական դատաստանաւ. ամենևին անհիմն ասէր զայս բանս նորա՝ Քահանայապետն, և վասն առաջնոց եղերանցն՝ անարժան զոլ ունկնդրութեան։

Բայց եթէ զի՞նչ սահմանեաց վասն անվերջանալի և անլուծանելի խնդրոյն՝ ոչ է յայտ. զի թերակատար է թուղթն՝ յորմէ իմանամք զայսոսիկ, այսինքն կամ ոչ հրատարակեալ աւարտն, կամ պակասեալ 'ի դիւանս։ Միայն թուի Լևոնի մեծօգութեամբ 'ի հաճոյս Քահանայապետին՝ յետս կացեալ 'ի վիճելոյ, թողեալ այլոց պահանջել զիրաւունս իւրեանց։ Թուղթ մի Քահանայապետին առ կոմսն Տրիպօլսի տուեալ 'ի 28 յանուարի[9] 1213 ամի՝ վասն վանահօր Ս. Պօղոսի վանաց Անտիոքայ, երևեցուցանէ զնա 'ի քաղաքին. և 'ի հակառակէն՝ թուի յետ երկուց ամաց՝ այն է յամի 1215 յամսեան մարտի՝ յԱնտիոք լինել Լևոնի, և վկայ պարգևագրացն՝ զոր ետ Ռուբէն իբրև Բրինձ Անտիոքայ՝ ասպետաց[10] Հիւանդանոցին. յորում պարգևագրի՝ թէ և չիք անուն քաղաքի, այլ վկայքն են պատրիարք և պարոնայք Անտիոքայ։ Ստուգագոյն ևս է, զի 'ի նմին ամի 1215 (պակասէ ամիսն) գրեաց Իննովկենտիոս՝ որպէս առ Թագաւորն Ե-

1 Թուղթք Իննովկ. ԺԴ. ԿԹ։

2 Թուղթք Իննովկ. ԺԶ. Բ։

3 In terram Antiochiæ Rupinum nepotem tuum cum non parve exercitu transmisisti.

4 Serenitatem tuam monemus, rogamus et exortamus in Domino, etc.

5 Ita ut hospes, si terram intraverit, absque regia bulla exire non possit. — WILLEBRAND.

6 Invite ac dolenter tibi negamus apostolicæ salutationis et benedictionis alloquiam.

7 Casalia, etc. a karissimo filio nostro in Christo L. illustri Rege Armenie pia liberalitate collata, etc. — *Cartulaire*, 121.

8 Թուղթք Իննովկ. ԺԶ. Ե։

9 Թուղթք Իննովկ. ԺԵ. ԺԹ։

10 Cartulaire, 135.

րուսաղեմի, նոյնպէս և առ Լեւոն, առաքել նաւս զի-
նեալս յօգնութիւն պատրիարքին Երուսաղեմի՝ ըեկաթի
իւրոյ. և թէպէտ միայն խորագիր թղթոյն մնայ, չատ է
և այն 'ի յայտնել զ՚նաչտութիւն և զհաճութիւն գրողին
առ որ գրէրն։ Արդ եթէ անգստին յամէ 1213 և եթէ 'ի
1215, մտեալ և տիրացեալ էր կոմսին յԱնտիոք. իսկ 'ի
սկիզբն յետագայ տարւոյ, այն է 1216, հուսկ անգամ [1],
« Ցամսեանն փետրուարի ժԴ, Տեառնընդառաջին, է-
» առ Թագաւորն Լեւոն զԱնտիոք, արուեստիւ և իմաս-
» տութեամբ. քա՛նզի զոր յառաջագոյն մեծաւ պատե-
» րազմաւ ոչ կարաց ածել 'ի հաւանութիւն, յետոյ ա-
» ռատատուր պարգևօք և խոստմամբ հաւանեցոյց զո-
» մանս յիշխանացն. և նոքա բացին նմա զդրունսն 'ի
» գիշերի. յոր եմուտ բազում զօրութեամբ, և էառ ըզ-
» դրունսն և զամենայն աշտարակս պարսպին շուրջանա-
» կի. և ելից զփողոցամէջս քաղաքին զօրօք բազմու-
» թեամբ. և բնակիչք քաղաքին ոչ գիտէին. և յորժամ
» եղև առաւօտ տեսին զքաղաքն լցեալ զօրօք, և ապշեալ
» յիմարեցան. և ոչ ինչ վնաս եղև ումեք, և ոչ ինչս յա-
» փշտակեալ։ Այլ պատրիարքն և ամենայն մեծամեծքն
» առին զԹագաւորն Լեւոն և զՌուպէն, և գնացին 'ի
» տաճար Սրբոյն Պետրոսի. և պատրիարգն ձեռնա-
» դրեաց զՌուպէնն՝ Բրինծ Անտիոքայ. և ամենեքեան



225. Դրամ Ռուբինի Բրնձի Անտիոքայ.

» երդուան նմա՝ որպէս իւրեանց հայրենի տեառն։ Նու-
» որք 'ի կլայն էին՝ կացին աւուրս ինչ. և տուեալ զայն
» ևս՝ եկին յերկրպագութիւն Բրընծին Ռովբինի։ Իսկ
» Թագաւորն Լեւոն հասեալ յայսպիսի գործոյ կատա-
» րումն՝ ցնծայր և յոյժ ուրախ էր ընդ աստուածային
» յաջողումն [2] »։ — Հանդէսն նման է կատարելումն
յառաջ քան զամս տասն (1206), զորմէ ինքն իսկ Լեւոն
մանրամասն ծանօթս ետ Իննովկենտեայ. թերևս յայտ-
մուս ձևանայորութիւնն՝ աւելի ինչ քան զտուչութիւն
գրօչուն նշանակիցէ. քանզի վաղագոյն իսկ Ռուբէն պը-
սակեալ էր 'ի Լեւոնէ թագաւորական թագիւ 'ի կայսե-
րէ բերելով. իսկ մեծ խնդութեան Լեւոնի առիթ էր
կլային առումն. յայտ է թէ փախստեամբ կոմսին, կամ
ոչ անդէն հանդիպելով [3], որ և զամս երիս ոչ կարաց
մուտս գտանել. և յետ այնր եմուտ և տիրեաց անհա-
կառակ, զի ոչ ևս էր Լեւոն յոտին, մերձ 'ի վախճանն
գոլով. դարձեալ խնդայր մեծապէս զի 'ի գլուխ եհան ա-
ւարտեաց զբազմամեայ և զբազմահօգ գործ մի կենացն.
և ոչ ոք եկաց հակառակ, ոչ պատրիարքն՝ որ թուի ձան-
ձրացեալ յաղիկամի գործոց կոմսին, և ոչ Տաճարականք՝
զորս գոհացուցեալ և լիացուցեալ էր։ Թէպէտ և զաղ-
տագողի իմն եղեն մուտքն, այլ յայտնապէս՝ ընդունելու-
թիւնն. գլուխ իշխանացն համախոհից Լեւոնի՝ էր սենես-
կալն Անտիոքայ, հաւանօրէն հայրն Արչիվալդայ զօրա-
կանի, որ մտեալ էր 'ի ծառայութիւն Լեւոնի, և յամի
1210-1 տեսաք ընդ Հեղեայ դեսպան առաքեալ առ
կայսրն և առ Քահանայապետն Իննովկենտիոս։ — Իսկ
զիա՞րդ արդեօք թուեցան սմա զայս նուագ՝ այսպիսի
մուտք Լեւոնի և տիրանալն Ռուբենի հայրենի ժառան-
գութեանն. կամ թէ լուան իսկ ստուգապէս զայսոսիկ 'ի
սակաւ ամիսս՝ յոր յետ այնր եկեաց 'ի վերայ երկրի.
— քանզի 'ի նմին իսկ ամի՝ յամսեան մայիսի երթալով 'ի
Բերուճիա՝ հիւանդացաւ, և անփոյթ արարեալ դարման
տանել անձին՝ անզամագոււթեամբ վախճանեցաւ [4], 'ի
կէս յուլիս ամսեան (16 կամ 17), թողեալ սուգ մեծ ժա-
մանակակցացն, և համբաւ մեծ յապագայն. ասասցուք
թէ և մեծ յիշատակ 'ի պատմութեան ազգիս մերոյ՝ յե-
կեղեցականն և 'ի քաղաքական. առ որս՝ նման ոք նմին
և նման Լեւոնի պիտէր 'ի ժամուն. և թերևս այլազգ
լինէր բաղդ սորա՝ եթէ ոչ այնպիսում հանդիպէր մեծ-
ագւոյ և զգօն հայրապետի. յորմէ՝ և ընդ շնորհացն՝ եգիտ
ևս ընդդիմութիւն ոչ սակաւ, այլ և ինքն ոչ սակաւ վա-
րանեցոյց զնա. և ոչ փոքր ժամանակ գողացաւ յերկո-
ցուն միանգամայն վեհիցն՝ անտիոքեան խծբիծն, խոչ-
ընդոտն եղեալ միոյն՝ յաւելուլ բարգաւաճանս նորա-
ստաց թագաւորութեանն, և միւսոյն՝ առ 'ի գլուխ հանել
զգործ խաչակրութեան և ազատութեանն Երուսաղեմի,
յոր անդուլ երկնէրն և ջանէր, գրէր և գործէր, զայն
ութևտասն ամս քահանայապետութեանն, և մինչ 'ի նոյն
դեռ ջանս էր՝ ըմբռնեցաւ յորհասէն։ Եթէ ըստ տեսու-
թեան յաջորդի նորին՝ (Ոնորիոսի Գ), որոյ չէր մարթ ան-
գիտակ լինել ցայն վայր եղելոցն, անկ իցէ դատել, ոչ
ունէր և Իննովկենտ անհաւան լինել յետին գործոյ Թա-
գաւորին. քանզի Ոնորիոս ոչ միայն 'ի թղթին առ Լեւոն
գովութեամբ խօսի զնմանէ (25 յուլիսի, 1217), և գո-
հութեամբ զՌուբինէ, Բրընձէ Անտիոքայ, և մաղթէ
Լեւոնի տակաւին խնամ տանել նմին՝ զի նման նմա լիցի,
այլ և ըստ խնդրոյ երիտասարդ Բրնձին՝ յանձնէ զնա և

[1] Պատմիչ մեր արքունի ասէ զայսոսիկ, համաձայն արևմտեայց։

[2] Նուաճման Անտիոքայ յայսմ ժամանակի՝ վկայէ 'ի նմին ամի մերձաւոր ընդօրինակող Մաշտոց գրոց 'ի Պայաս, « Ի թուականու-
» թեանս ՈԿԵ... յամս՝ յորում Տէրամբ՝ յաղթող թագաւորն
» Հայոց Լեւոն՝ էառ զԱնտիոք, զմեծ մայրաքաղաքն Ասորւոց»։ —
Ցիչէ և Ներսէս Պալենց 'ի ժամանակագրութեանն (կանխելով զժա-
մանակ թագաւորութեան Լեւոնի) եթէ 'ի « ԻԱ ամի թագաւորու-
» թեան իւրոյ՝ սոյն Լեւոնս էառ գաւով 'ի գիշերի զնոյն Անտիոք
» մեծն, և կացոյց անդ Բրինձ զՌուբէն՝ զթոռն եղբօր իւրոյ »։ —
Դարձեալ այլ ոմն ընդօրինակող աւետարանի յերկրորդում ամին
(ՈԿԶ, 1217) ասէ գրեալ՝ « Ի թագաւորութեան քրիստոսապսակ
» արքայիս մերոյ Լեւոնի, որ է որդի Ստեփանէի, եղբայր մեծին
» Ռուբէնայ, որ միապետեալ ունի թագաւորական իշխանութեամբ
» զամենայն նահանգս Կիլիկեցւոց և զմեծն Անտաք. որոյ յիշա-
» տակն աւրհնութեամբ եղիցի, և անուն նորա ազգաց յազգս»։

[3] Ցիշի 'ի պատմութեան յամի 1217 հրաւիրել նորա յԱնդրէա-
սայ թագաւորէ Ունգարացւոց և յայլոց՝ և երթալ 'ի մարտ ընդդէմ
այլազգեաց, և յերկրորդում ամին՝ 'ի տօնի Տեառնընդառաջին՝ լի-
նել 'ի Տրիպօլիս, և երկրորդ անգամ ածել կին զՄելիսինտէ դուստր
Ամաւրեայ թագաւորին Կիպրոսի և Իզաբելլայ դշխոյի։

[4] Անդ և թաղեալ մնաց մինչև ցայս ժամանակ՝ յորում գրէի
զայսոսիկ, (1885), և լսեմ զի այժմու Քահանայապետս Լեւոն ԺԳ՝
պատրաստէ նմա շիրիմ 'ի Հռովմ, ուր և փոխադրելոց է ոսկերս
նորին։

'ի խնամս Հիւանդանոցի ասպետացն, լինել ինքեան ձեռնտու յոր պէտս և կարօտիցի. բնաւ ինչ ոչ յիշելով զՏրիպօլսեցին։

Բայց զկնի այսպիսեաց և այսքանեաց անցից, յետ երից ամաց, մինչ մերձ էր 'ի կափուցանել զաչսն յաշխարհէ, լուաւ Լեւոն, եթէ ահա դարձեալ արտաքս անկեալ է Ռուբէն յԱնտիոքայ. այլ վասն իւր վճարեալ էր այնուհետև հոգ կենցաղականացս. աւարտեալ էր իւրովանն զերկարագոյնն քան զտրովականն պատերազմ և պաշարումն քաղաքին, յորմէ չորիցս և հնգիցս 'ի բաց քեցեալ կամ կացեալ՝ 'ի վերջէ ուրեմն էառ և տիրաբար աւանդեաց որում անկ էր, և նմա մնայր այնուհետև՝ որ 'ի չափ հասեալ էր, պահելն կամ կորուսանել։ Նուաճմամբ հակառակորդին՝ յամօթ արար Լեւոն և զկործեցողսն՝ եթէ վասն ընդարձակելոյ զիւր տէրութիւնն նկրտի առնուլ զԱնտիոք. այլ առաւել քան զայս և քան զամենայն յաղթութիւնսն՝ մեծ եղև յաղթանակ նորա 'ի վերայ անձինն, սանձելով զբաղձանսն և զզօրութիւն սրտի՝ գերագունիւն արութեամբ ոգւոյ, 'ի պատիւ վեհագունի անձին, Քահանայապետին Հռովմայ, զոր ոչ միայն իւր հարանց հայր ճանաչէր՝ այլ և իբր յաստուածուստ թագամառոյց։ Եթէ կեղծաւոր ոք էր՝ ըստ կարծեաց Կիրակոսի, կամ ըմբոստ և ապառում՝ իբրև զՊեմունդն Տրիպօլսեցի, կարէր ապախտ առնել, և յեցեալ յիրաւունս՝ որ յաչս նրբատեսից՝ առաւել յիւր քան յօտարին միտէին կողմն, մոռացիւր ջանիւ և բռնութեամբ վաղագոյն ևս ունել և պահել զԱնտիոք, մինչ յաջողեացն զՏաճարական ասպետացն խրոխտումն խորտակել, և զՀիւանդապահն երախտապարտս ինքեան կացուցանել. մինչ՝ ակն յայտնի տեսանէր զի մերձաւորքն ազգաւ, լեզուաւ և ծիսիւ, և ոչ կոմսն միայն, անսաստէին խրատուց, հրամանաց և բանադրանաց, այլ և ողջոյն բանակք և տորմիղք Ե խաչակրացն՝ խոտորեալք 'ի ճանապարհէ Ասորւոց, ընդդէմ յայտնի պատուիրանի նորին Քահանայապետի Իննովկենտեայ, երթան պաշարեն առնուն զԶարա. և ալեւոր դուքսն Վենետկոյ (Տանտոլոյ) մեծագոյն իրաւունս համարի նուաճել զապստամբեալն. և դարձեալ՝ սաղապեալ անտուստ թողլով զազատութիւն Սրբոյ երկրին՝ երթան կործեն զԿոստանդնուպօլիս և ըզկայսրութիւն արևելից. և 'ի բողոքել անդ Նուիրակաց Սրբազանին, ասեն, ճանապարհ Երուսաղեմի ընդ այս է. ապա 'ի գլուխ հանեալ զայս ամենայն և լցեալք աւարաւ և աշխարհաւ, ներողութիւն հայցեն 'ի Հայրապետէն, 'ի դերև հանեալ զպատեհն և զդիտումն նորա։ Զայսոսիկ և զսոցին նմանս տեսեալ յարևմտեայս, հաւատարմագոյն քան զնոսա և յաղթողագոյն գտաւ Լեւոն բարոյապէս. և այս յաղթութիւն՝ (որոց աւագ աչօք հայեցին՝) պայծառագոյն ճաճանչէ 'ի հոյլս ականակուռ թագի նորա, որով բարձր 'ի գլուխ պանծայ և Մեծ հռչակեցաւ 'ի ժամանակին յայնմ և յայժմուս, ակն ունիմ թէ և մինչև 'ի սպառ։

Իսկ մեզ յետ հարկաւորելոյ կամաւ և ակամայ՝ ըստ երկարութեան խնդրոյս այսորիկ Անտիոքայ՝ դեգերել արտաքոյ բնիկ երկրի թագաւորիս մերոյ, արժան է ամեննիմբ՝ 'ի ներքս 'ի նոյն դառնալ, և տեսանել զնա յայլ և այլ դէպս և դէմս առտնին գործոց, որպէս զի ըստ կարի մերում ստուգագոյն ևս ծանիցուք որպիսի ոք էր Լեւոն։



226. Հին անդրի, պատկեր Անտիոք քաղաքի.

# ԴՐՈՒԱԳ Է.

*Նուաճել Լեւոնի զազգային աւագս. — Ա. Հեթում տէր Լամբրոնի. — Բ. Յովհաննէս է կաթողիկոս Մեծաբարոյ. — Գ. Կամարտիաւանք. — Դ. Զաքարէ սպասալար եւ Լեւոն. — Ե. Մերժումն թագուհւոյն վասն յանցանացն, եւ կին երկրորդ առնել Լեւոնի. — Զ. Ռուբէն կարգի ժառանգ Լեւոնի. — Է. Յովհան Պրինն թագաւոր Երուսաղեմի փեսայանայ Լեւոնի։*

Ա. Որ այնքան վրէժխնդիր էր իրաւանց Թոռնէին, և այնքան երկար ամս և ընդ այնքաննաց վէհից և հզօրաց մաքառեցաւ և ժուժկալեաց, չիք երկբայել եթէ առաւել ևս նախանձախնդիր էր իւրում սեփական տէրութեանն, զոր այնքան ճարտարութեամբ և խորագիտութեամբ ստացաւ. և ոչ իմիք խնայէր 'ի հաստատութիւն նորին, կամ առ աներկեան առնել զնոյն հաստատութիւն. և յայսմ՝ առաւել քան յարտաքնոցն՝ 'ի ներքնոց անտի յազգային իշխանաց ունէր խէթ կասկածանաց, թերևս առաւելազանց և ոչ միշտ արդարակշիռ։ Առաջին յայսպիսեաց էր Լամբրոնեան պայազատութիւն Հեթմեանց ազնիւ տոհմի, երիցագունի քան զիւր Ռուբինեանցն՝ յերկրիս Կիլիկիոյ։ Բերդն այն ամուր՝ սարաւանդեալ յառաջին գահս Տաւրոսի՝ խոչընդակն եղև միշտ որդւոց Ռուբինի, և թուէր իմն ընդդիմամարտ արձանացեալ նորակառոյցն Սսոյ։ Ծանօթ են որչափ ինչ աբարին հօրեղբարք իւր և եղբայրն և ինքն իսկ Լևոն՝ մինչ չև էր պայազատեալ՝ հակառակ Լամբրոնի և Լամբրոնեանց, և ոչ կարացին երբէք 'ի բուռն առնուլ զամրոցն զայն՝ և յետ երկար պաշարմանց. ապա կամաւ և ակամայ զիջանէին 'ի հաշտութիւն խաղաղութեան. այսպէս երևի և 'ի ժամանակի պարոնութեանն Լևոնի. քանզի և 'ի հանդիսի թագաւորօրհնէիցն՝ ընդ այլ պարոնայս եկեալ էին 'ի պատիւ՝ երկուքին եղբարք Ս. Ներսիսի, տեարքն Լամբրոնի և Լուլուայ։ Առաջինն՝ Հեթում՝ անդրանիկ պայազատ տոհմին և տէր պանծալի ամրոցին, ազգական իսկ էր Լևոնի, թոռն գոլով 'ի մօրէ հօրեղբօր նորին, պատուեալ 'ի Յունաց սեբաստոսութեամբ, պատուականագոյն ևս զգօնութեամբն և պերճութեամբ. յոր յաւելեալ և սրբազան շուք շնորհաշատ հարազատին իւրոյ՝ արքեպիսկոպոսին Տարսոնի՝ 'ի խաղաղութեան զնա յապահովէր, նաև 'ի վերանալն Լևոնի յարքայական աթոռ. այլ այն ինչ փոխեցաւ Սուրբն 'ի կենացս, փոխեցան և պայմանք քաղաքավարութեան երկոցուն պայազատացս, թագաւորին և բերդատեառնն։ Ոչ գիտեմ եթէ ես ինչ սա պատճառս խիթալոյ, եթէ լոկ առ կանխակալ կասկածանայն և վաղեմի ոխութեանն, կամ առ դրակցութեան սահմանաց Լամբրոնեցւոյն ընդ սուլտանին Իկոնիոյ, որում բարեկամ և նիզակակից եղեալ էր հօր նորա Օշնի՝ ընդդէմ Ռուբինեանց, և զայս իսկ ասեն պատճառս՝ պատմիչն արքունի և Կիրակոս. և վասն այսորիկ, (ըստ առաջնոյն բանի), «Խորհէր Լևոն իմաստութեամբ փետտել զթևս նոցա, և ցածուցանել ըզբարձրայօն հպարտութիւն նոցա»։ Ոչ է մեզ յայտ որչափ ինչ էր բարձրայօնակ հպարտութիւնն Հեթմոյ, կամ որչափ ստոյգ ապստամբել նորա 'ի Լևոնէ, որպէս Կիրակոս ասէ, և յաւելու, եթէ սորա «բազում անգամ ջանացեալ՝ ոչ կարէր նուաճել զապստամբն». և ոչ մանաւանդ զամուր զբերդն՝ յոր ապաստանեալ կայր, և երկար պաշարման ոչ ներէին բազմապատիկ հոգք թագաւորութեանն. խորհեցաւ «ապա յետոյ խորամանկութեամբ խաբել զնա՝ խնամութեան աղագաւ». և «խօսէր ընդ Հեթում բանս սխորժականս մտաց նորա. Կամք են իմ առնել ընդ քեզ կապակցութիւն սիրոյ. և տալ զդուստր եղբօր իմոյ Ռուբինի՝ զՖիլիպն՝ 'ի կնութիւն որդւոյ քո երիցագունի՝ Օշնի. և Հեթում շնորհակալութեամբ ընկալաւ զբանն, և ուրախացաւ. և ապա 'ի քաղաքն Տարսոն պատրաստեցին զպէտս հարսանեաց. և Հեթում եկն տամբ և զաւակօք և ամենայն աղխիւք 'ի Տարսոն։ Եւ թագաւորն Լևոն կալաւ զնոսա. և առաքեալ էառ զԼամբրոնն, առանց մարտի». այլ ոչ և առանց ահարկութեան. զի կային 'ի նմա ոմանք յորդւոց Հեթմոյ, թերևս կրսերքն, և լուեալ զի հայր իւրեանց և եղբարքն կալեալ եղեն 'ի Լևոնէ և 'ի բանտ ևս արկեալք, յանձն առին յազատութիւն նոցին՝ մատնել զամրոցն. զոր առեալ Լևոնի՝ գրեաց յարքունիս, և ետ մօր իւրում Ռիթայ տիկնաց տիկնոջ, երդուեալ, կամ (ըստ Կիրակոսի) «գրեաց նզովս՝ ոչ ևս այլ տալ զնա իշխանի ումեք, բայց միայն արքունի լիցի. զի հանապազ, ասէ, տեարք նորա ապստամբք են լեալ վասն ամրութեանն»։ Ապա արձակեաց զՀեթում «'ի բանտէն, ետ նմա գեղորայս բազումս, և պատուով ընդունէր զնա. և նա ծառայէր նմա միամտութեամբ, ըստ իմաստութեան իւրոյ»։ — Դիւրին էր թերևս զրկելոյն միամտել, քան զրկողին չերկմտել. ոչ հանգեան միտք Լևոնի 'ի Հեթումն, թուի իմն եթէ առ խղճին իւրոյ՝ քան նորա անզգոյշ ինչ գնացից. և ահա յետ սակաւ ամաց (թուի 'ի 1202), վերստին ետ ունել զՀեթում և արգելուլ

յամուրն Վահկայ։ Լուեալ զայս 'ի հեռուստ քեռւոյ սորին՝ ծերունի կաթողիկոսին Գրիգորի Ապիրատի, եւ 'ի Հռոմկլայէ, և հատեալ զերկարութիւն ճանապարհին՝ եկն աղերսել առ թագաւորն, զի արձակեսցէ զքեռորդին 'ի բանտէն, միանգամայն և բարձցէ զգայթակղութիւն ոխութեանն։ Զիջաւ վաղվաղակի Լեւոն յաղաչանս հայրապետին, և կամեցաւ ինքնին երթալ և հանել պատուով։ Այլ մինչ չև եկեալ նորա և քեռւոյն՝ վախմական իմն խորհեցեալ Հեթմոյ՝ փափագեաց զերազունի ազատութեան. եդ 'ի մտի հրաժարել 'ի սպառ յաշխարհական չքոյ հեթեթանաց, որ գրեաթէ 'ի խանձարրոց յաչաղեցին նմա. զի 'ի զրկաց մօրն՝ անկաւ 'ի յաղթկու զիրկս Թորոսի Բ, և մինչ չև զաջ և զահեակ ծանուցեալ՝ պսակեցաւ ընդ դստեր նորին. ապա բազում անգամ նեղեցաւ պաշարմամբ Լամբրունի՝ 'ի Մլեհէ, 'ի Ռուբինէ և 'ի Լեւոնէ. և զի արդէն 'ի ձեռս սորա անկեալ էր բոյն տոհմին իւրոյ և հայրենի գերեզմանքն (Սկեւռայ), կամովին այնուհետև եթող ելից զկալուածսն 'ի ժառանգս իւր. յիշեաց զմայր իւր Շահանդուխտ և զքորսն անձկալիս՝ զՑալիթա և զՇուշան, զկանխեալսն 'ի փոխել զփափկութիւն իւրեանց՝ ընդ աշխարհուրաց խստակրօն տարազու. յիշեաց մանաւանդ զհայրացեալն բնաւից զհարազատ իւր Ս. Ներսէս, որում այնքան ցանկալի էին միայնութիւնք և անապատք աղօթանուէրք. և հրամայեաց բերել սքեմ կրօնաւորութեան, զգեցաւ և ծածկեաց զմնացուած իշխանական նշանացն, յառեալ այնուհետև զաչսն յընթերցուածս գրոց, և զմիտսն յԱստուած. և կեայր յանդորրու՝ որպէս թէ ոչ երբէք բազմեալ 'ի սեբաստական բարձի խորխատապանծն այն դղեկին Լամբրունի։ Մեծ եղեն հիացումն և ստրջանք թագաւորին՝ 'ի տեսանելն զհամարեալն իւր հակառակորդ՝ յայնպիսում հեզութեան սարասի. և ամենայն փայլք փառաց իւրոց՝ ստուերացան յայնմ պահու՝ 'ի պարզութեան առաքինակրօն համբերողին. այն օր կարծեմ յաղթեցաւ Լեւոն քան յայլում երբէք աւուր. անկաւ անկեղծ խանդաղատանօք զպարանոցաւ խոնարհելոյն վասն իւր և վասն հեղինակին խոնարհութեան՝ Տեառն Յիսուսի. համբուրեցին զիրեար, խնդրեցին ներումն թողութեան յիրերաց, և ձեռն 'ի ձեռն տուեալ թագաւորին և գերազանցեալ կրօնաւորին, ելին 'ի վաղեմի ոստանէ անտի Ռուբինեանց։ Եւ զի հաստատութեամբ 'ի մտի եդեալ էր Հեթմոյ՝ ոչ ևս մտանել յապարանս աշխարհականս, այլ 'ի մենաստանի ուրեք հանդարտել զմնացուած կենաց իւրոց, ընծայեաց նմա Լեւոն զնախապատիւն և զգերահռչակեալն մենաստանաց աշխարհին՝ զԴրազարկն, 'ի դադար և յաթոռ, տէր և առաջնորդ նմին զնա կարգեալ. ուր և եկաց ցօր մահուան իւրոյ, ընդ աշխարհական ձևոյն և նշանի՝ փոխեալ և զանուն իւր պանծալի և զտոհմային՝ 'ի ծերացեալն անուն Հեղի, ոչ գիտեմ որպիսի խորհրդով ընտրեալ։ Ոչ յիշի եթէ էառ և զօծումն քահանայութեան, և զբարձրագոյնն ևս, այլ հաւանական թուի. 'ի միում 'ի թղթոցն՝ Քահանայապետն Ինովկենտ՝ առ որ դեսպանութեամբ եկեալ էր Հեթում—Հեղի՝ յամի 1210-1, անուանէ զնա Աբբայ Ս. Աստուածածնի Դրազարկի (Abbas S. Mariæ Trium-Arcium).

զի թէպէտ և սիրէր նա համակ զառանձնանալն, այլ Լեւոն քաջ գիտակ նորայն հմտութեան լեզուաց և ուսմանց, և մանաւանդ խոհականութեանն, որպէս զայլս 'ի հանճարեղից եպիսկոպոսաց և պարոնայց՝ խառնէր և զնա 'ի կարևոր պէտս և տեսչութիւնս թագաւորութեան իւրոյ. և յոյժ առաւել օժանդակեցաւ 'ի սմանէ 'ի կրօնաւորութեանն, քան յայլոց՝ յաշխարհական իշխանութեան. որպէս յայնմ դժուարին դեսպանութեան, մինչ անտիոքեան խնդրոյն խէթ կայր 'ի մէտս Քահանայապետին, և յայլում ծանր դիպուածի՝ յորում խէթ ընդ թագաւորն էր և ընդ կաթողիկոսն Հայոց Յովհաննէս. առ որ և առաջնորդէ այժմիկ կարգ բանիս պատմութեան։

Բ. Քանզի ծերունի հայրապետն Գրիգոր՝ որ ազատեաց, թերևս և օրհնեաց զքեռորդին իւր Հեթում 'ի կարգ կրօնաւորութեան և աբեղայութեան, ծանրացեալ տիովք, զաւետարանական ծերունւոյն երկրորդեաց զարձակուրդ կենաց՝ 'ի դէպ ժամու խաղաղութեանն. և անդէն մինչ առ թագաւորին կայր՝ եհաս նմա վախճան, յետ իննամեայ աթոռակալութեանն, 'ի սկիզբն ամսեան մարտի (դ աւուր) 1203 տարւոյ, և թաղեցաւ 'ի մեծափառ վանս Արքակաղնին. յինքն դադարեցաւ քահանայապետական տոհմն Պահլաւունեաց, որ յընթացս ամաց իբր հարիւր և քառասնից (1065-1203) ընծայեաց զհընգեսին Գրիգորս (Բ-Զ), և զգերազանցեալն զամենեքումք զՆերսէս Շնորհալի։ — Երեցուն յետնոց կաթողիկոսացն ժամանակակից և գործակից եղև Լեւոն, յորոց երկուցն՝ ինքնին իսկ հաւանող և հաստատող ընտրութեան, որպէս և մերժման միոյն (Քարավիժին)։ Հաճութեամբ և հրաւիրմամբ իւրով (եթէ ոչ և դրդմամբ) ընտրեցաւ յաջորդ Պահլաւունեացդ՝ 'ի զարմէ Հեթմեանց՝ որդին Կոստանդեայ՝ հօրեղբօր Հեթմոյ-Հեղեայ և Ս. Ներսիսի, Յովհաննէս Է կաթողիկոս. ըստ ազնուութեան տոհմին և բարուքն հաւասարեալ, և մեծանձնութեամբ գերազանցեալ քան զիշխանազուն հօրեղբօրորդիսն, մինչև բնական իմն մակդիր անուն ընծայել նմա Մեծաբարոյ. կոչեալ է և Ծօն, որ ոչ գիտեմ զինչ նշանակէ։ Որպէս համշիրակ իւր Ս. Լամբրոնեցին՝ քաղաքամօր աշխարհին Կիլիկիոյ (Տարսոնի) եկաց դիտապետ, և սա նորոյ մայրաքաղաքին Սսոյ՝ յարքեպիսկոպոսութիւն, և յառաջնորդութիւն Դրազարկու, և 'ի ժամանակի թագընկալութեանն Լեւոնի՝ միայն երկոցուն արքեպիսկոպոսացն Մսսայն և Կապանի՝ ստորև կարգեալ էր, թերևս զի նոքա յառաջ քան զբարձրանալ Սսոյ 'ի պատիւ՝ ընտրեալ էին յայն մեծավիճակ աթոռս. բայց աթոռակալն Յովհաննէս՝ և ոգւոյն մեծութեամբ և մտացն հարստութեամբ՝ գերազանցէր զյոգունսն, և թերևս յետ անհաւասարելոյն Ներսիսի՝ նա էր առաջին հանճար յուխտի եկեղեցւոյն, միանգամայն և գործօն և մեծագործ այր. վասն որոյ և կարգեցաւ 'ի Լեւոնէ քարտուղար կամ ատենադպիր պետութեան իւրոյ, որպէս թուի և վասն հմտութեանն լեզուաց և մակացութեանց, որ առանձինն իմն ձիր էր Հեթմեան տոհմի. այլ և դատաւոր խնդրոց և վիճից եկացն արևմտեայց՝ բնակելոց կամ վաճառականելոց 'ի Սիս և յայլ քաղաքս։ Տեսաք զնա գլխաւորդ խո֊

րագիտութեամբ և զինուորական իմն ճարտարութեամբ երթեալ 'ի Հռոմկլայն՝ կալաւ զմանուկ կաթողիկոսն Գրիգոր (1195) և եբեր առ Լևոն. — և որպէս 'ի գալ Ե խաչակրաց և Նուիրակի կայսերն և Քահանայապետին Հռովմայ՝ 'ի Պտղոմայիս, դեսպանութեամբ առաքեցաւ առ նոսա 'ի Լևոնէ՝ յողջոյն, և 'ի խնդիր թագին. և յետ օծման սորա՝ 'ի գրելն ընդ կաթողիկոսին թուղթ շնորհակալութեան 'ի Հռոմ, գրեաց և ինքն Յովհաննէս, խնդրելով միթր և մատանի, իբրու ջատագով միաբանութեան եկեղեցւոյ և յորդորիչ խաչակիր զինուորութեան, և ընկալաւ զոր խնդրէրն 'ի Արքայանէն. առ որ դարձեալ գրէր՝ այն ինչ ընտրեալ 'ի կաթողիկոսութիւն՝ բազում ճարտարութեամբ և մեծանձնութեամբ, յորժամ 'ի սաստկանալ անտիոքեան հակառակութեանց, 'ի տատանել Պետրոսի Նուիրակի և 'ի պընդանալ Լևոնի, ժողովն Անտիոքայ ընդ բանիւ առնել զսա փութացաւ. յայնմ թղթի Յովհաննէս՝ ընդ գանգատանսն՝ զոյգ բանից թագաւորին, զի առանց հարցանելոյ զուխտ եկեղեցւոյ իւրոյ՝ այնպէս վճռեցին, յիշեցուցանէր և զվստակ իւր 'ի հաւանեցուցանել զիւրսն՝ 'ի պայմանս Նուիրակաց Քահանայապետին, յորոց է ինչ զի յանձն առին առ ժամայն, և է զի թողին քննել յատեան սինհոդոսին իւրեանց, զոր խոստանայր գումարել 'ի դէպ ժամու, կոչելով զամենայն կամ զմեծ թիւ եպիսկոպոսաց իւրոց՝ 'ի զանազան կողմանց։

Ընտրեալ յաթոռ կաթողիկոսութեան յամի հինգերորդի թագաւորութեանն Լևոնի, միով ամաւ զկնի վախճանի նորին և ինքն հանգեաւ. զմեծ մասն ժամանակին՝ որպէս և յառաջ քան զկաթողիկոսութիւնն՝ կեցեալ համամիտ և գործակից թագաւորին, բայց միայն յամաց ինչ 'ի միջոցին, յորս եղև գժտութիւն և հակառակութիւն մեծ ընդ նոսա. և Յովհան միայն կարաց և գիտաց կալ կանգուն և յանկմանն՝ ընդդէմ Լևոնի, որպէս երբեմն սա 'ի լինելն ընդ բանիւ՝ ընդդէմ հակառակորդացն. զի ըստ կոչմանն ընծայելոյ նմա՝ ունէր սիրտ, թերևս առաւել իշխանական քան քահանայական. և ըստ պատմչին մերոյ, « Էր այր խորագէտ և իմաստուն, և
» առատաձեռն. սեղանով արքայակերպ. և խոնարհ
» սրտիւ, և անպաճոյճ անձամբ, և 'ի հոգևորսն ան-
» փոյթ [1]. զառաքինիս յոյժ սիրէր, և ոչ տայր թոյլ հրա-
» պարակել զմնասս կարգաւորաց։ Շինասէր էր, և տան
» յարդարիչ և պիտոյից պատրաստիչ. որ և զբերդն
» Հռոմկլայն՝ քաջ ամրացոյց. (յոր սակս) քակեաց յե-
» կեղեցական սպասուցն՝ բազում անօթս ոսկեղէնս և
» արծաթեղէնս. և զամենասեան զեկեալսն առ ինքն բա-
» րիոք դարձոյց » [2]։ Մարթ է այսոցիկ անուղղակի պատճառ գրել զԼևոն, իբրու այն՝ զի 'ի մերժելն զնա յաթոռոյ և 'ի նեղել, պակասեցոյց զհասոյթս աթոռոյն. և թերևս կասկածելով իսկ սորա, եթէ որ երբեմն զկաթողիկոսն 'ի Հռոմկլայն ըմբռնեաց, նոյն և այժմ ինքն 'ի նմին յայլոց ըմբռնիցի, կամեցաւ Յովհաննէս քաջ քաջ ամրացուցանել զբերդն. և յայն սակս և վասն սեղանոյն՝ զայնքան անգին սպասս քակեաց և եղծ զՊահլաւունեացն յիշատակս։ Իսկ առիթ հակառակութեան և գժտելոյ երկոցուն զոռոզ գլխոյն՝ եղև նման իմն Լամբրոնեանցն դիպաց. և է ծանուցեալն այս ինչ։

Գ. Ցիչեցաւ 'ի բազում նուագս 'ի պատմութեանս, և ցուցաւ մի յաւագ և 'ի յաջողագոյն պարոնայց և յիշ ճորտից Լևոնի՝ Կոււմարտիան Կոստանց, և երկիցս կարևոր դեսպանութեամբք առաքեալ առ աւագագոյն պետականս, առ Փրետրիկ կայսր յԻտալիա, և առ Նուիրակս Քահանայապետին և առ իշխանազուն Խաչակիրս՝ 'ի Պտղոմայիս. էին նորա և եղբարք երկու կրսերք՝ Ճօսլին և Պաղտին, ամենեքին որդիք Հեռեայ սեբաստոսի, որոյ պատիւ յայտ առնէ 'ի դրանէ կայսեր ընկալեալ յառաջ քան զմտանելն կամ անկանել ընդ տէրութեամբ Հայոց, և ազգաւ իսկ յոյն կամ լատին գոլ. դասեալ ընդ աւագագոյն պարոնայս դրան Լևոնի, և տէր Կումարտիասայ և Նորբերդի, 'ի գետահովտին Սելևկիոյ. յորում թուի թէ և սա ինքն Կոստանց անդրանիկն՝ տիրէր մեծի քաղաքին Սելևկիոյ և Պունառայ բերդի։ Ի վերայ մեծութեանցն և ճոխութեանց՝ ունէին սոքա և առաւելութիւն գերագոյն, զազգակցութիւն ընդ թագաւորին և ընդ կաթողիկոսին. զի Լևոն ինքնին 'ի թղթին առ Խնովկենտ, ազգական իւր կոչէ զԿոստանց. իսկ Յովհաննու՝ փեսայ իսկ էր Հեռի, և որդիքն՝ քեռորդիք նորա։ Եւ իբրև այսպէս պատուեալք և 'ի մեծամեծ գործս վարեալք լինէին 'ի Լևոնէ, ոչ գիտեմ որպիսի ինչ անգիտացեալ սոցա, կամ զանգիտեալ Լևոնի, յեղակարծումն զչորեսին միանգամայն՝ զհայրն և զորդիս ետ ըմբռնել և արգելուլ կապանօք 'ի բանտ, յամի 1207. և թուի առ ծանր ինչ յանցուածոյ կամ կասկածի. զի բովանդակ ամս եթող զնոսա յարգելանին, և ոչ իսկ լուաւ աղաչանաց մերձաւորի նոցին և իւր մտերմի Յովհաննու, որոյ լոկ և կաթողիկոսութիւնն՝ թո՛ղ թէ ազգակցութիւն՝

1 Ի հին օրինակի պատմչիս՝ ճարտարութեամբ ջնջեալ են երկու գծերք ոմանք՝ զբացատական մասնիկն անփոյթ։

2 Ցայս վայր հին օրինակ պատմչիս. իսկ որ յանուն Սմբատայ Գունդստապլի՝ գրէ յաւելուածով յականատեսէ, որ յայտ է թէ չէր ինքն Սմբատ, զի յայնժամ սակաւամեայ տղայ էր նա և ոչ 'ի Հռոմկլայն. « Քակեաց (ասէ գրիչն, ընդ այլ սպասուց, և) զՊահլաւն
» Սրբոցն՝ յոսկւոյ և յարծաթոյ և յականց զարդարած, զոր Տէր
» Ներսէսն (Շնորհալի) յառաջ էր շինեալ. և յետոյ Տէր Գրիգոր
» Ապիրատն փարթամացոյց, և գրեց 'ի վերայ զերկոքին անուանս.
» զմեծ խաչն ոսկեղէն զՊարոն Վասլին՝ քակեաց, և հալեաց ձուլ ոսկի
» սուրբ Նշանն Գրիգորիսի. և էառ ակունս և մարգարիտս շատ. քա-
» կեաց զոսկիակազմ տուփ աւետարանին Տէր Գրիգորիսի, որ էր
» ակամբ և մարգարտով. քակեաց զ[illegible] * Նախորան Տէր
» Ներսեսի, որ ձար ոսկով կարած էր, և զէտ ձուլածոյսն կանգնէր.
» քակեաց զոսկին, և զքարինսն և զմարգարիտսն 'ի Գօտւոյ սուրբ
» սեղանէին՝ զոր շինեալ էր Տէր Գրիգոր. էառ զմեծ Լուսաւորչին ու-
» ծանին՝ զոր շինեալ էր Տէր Գրիգորիս և կախեալ 'ի գմբէթն Սուրբ
» Գրիգորի. քակեաց զԿամարան Տէր Գրիգորի, զոր շինեալ էր
» ոսկւով և մարգարտով և ակամբք։ Այլ մի վասն գրելոյս մեզ
» մեղադրէք. զի չէ թէ 'ի համբաւէ լուաք, այլ տեսաք և շօշա-
» փեցաք 'ի քակելն՝ ձեռօք, և լացաք ընդ այն վայելչութեան ան-
» զարդ մնալն։ Այլ զբերդն՝ (Հռոմկլայ) շինութեամբ կարի ամրա-
» ցոյց »։

* Ցոյնք զպայծառութիւն երանգոց և մանաւանդ զծիրանւոյ յայտնէին ὀξεῖς կամ ὀξεός բառիւ, ընդ որում զուգեալ և լատինականն պլատտա (blatta), որ նշանակէ զորդան կարմիր, oxyblatta յայտ առնէ՝ զի յիշեալն և սխալագրեալ 'ի պատմչէ մերմէ՝ էր պայծառափայլ ծիրանի՝ թանձր ոսկէթել անկեալ։

ծանրակշիռ էր յայս դէպս։ Ըստ այնմ և սաստկապէս
սրտառեալ Մեծաբարոյն այն՝ խռժոռեցաւ, 'ի բաց դար-
ձոյց զՀայրապետական դէմսն 'ի Թագաւորէն, որպէս և
սա զիւրն 'ի կաթողիկոսէն. զի յոյժ աՀաւոր և անխո-
նարՀելի էր սիրտ Լեւոնի առ Հակառական. այլ և Յով-
Հաննուն՝ անտեղիտալի գտաւ առ Լեւոն անգամ. և այս-
պէս աննկունք իրերաց Հանդիպեալք՝ ոչ այլ ինչ էր այ-
նուՀետև ակն ունել՝ բայց որպէս յընդդիմակաց ամպոց
բաղխելոց՝ որոտմունս և ձայթմունս լսել երկուստեք, և
արՀաւիրս կացելոցն 'ի ստորև. և երկաքանչիւր իւրայ-
նովն սեփական իշխանութեամբ 'ի վերայ իրերաց խի-
զախէին։ Ոչ պատմին Հակառակընդդէմ գործք նոցին.
այլ չեն թեթև բանք պատմչին, եթէ «Այնքան մեծա-
»ցաւ ատելութիւն 'ի մէջ նոցա, մինչ զի 'ի բաց մեր-
»ժեաց զնա Թագաւորն, և առաջնորդքն և իշխանքն
»Կիլիկեցւոց.» որով և յայտ առնէ՝ զի Հեռաւորքն ան-
ծանօթք կամ անՀաւանք իրացս՝ ոչ կամէին մխիլ 'ի ծանր
և յանսովոր դէպքս, որ դոյզն անգամ Հանդիպեալ էր
յառաջ քան զայն ժամանակ. և զաՀընկէցութիւն Պե-
տրոսի Գետադարձի 'ի ձեռն ՅովՀաննու Սմբատայ Բա-
գրատունեաց Թագաւորի՝ տակաւին աշխարՀածանօթ էր
և անՀամբոյր յաչս ամենեցուն. այլ աստանօր ոչ ոք իշ-
խէր կամաց Լեւոնի կալ Հակառակ, նաև ոչ ստգտանել
ոք զնա երևի. այլ պարզաբար վկայեն պատմիչք՝ փոխա-
նակ ՅովՀաննու միաբանեալ և եղեալ կաթողիկոս Հայոց
զՏէր Դաւիթ՝ զարքեպիսկոպոսն Մսսայ և զառաջնորդ
Արքակաղնոյն, որ և նախագաՀ գտեալ էր յուխտի ե-
կեղեցւոյն՝ յետ կաթողիկոսին՝ 'ի Հանդիսի օծմանն Լե-
ւոնի։ Միայն Անանիա եպիսկոպոս Սեբաստիոյ՝ որոյ յա-
ռաջագոյն իսկ ասի ակն ունել կաթողիկոսական աթո-
ռոյ, որպէս և ՅովՀաննէս, (մինչև ասել ոմանց եթէ սո-
քա և այլք ընկեցիկ արարին զողայ կաթողիկոսն Գրի-
գոր, և ոչ թէ ինքնին քարավէժ եղև, թէպէտ և չէ
Հաւանելի ցայսվայր անկղխտանալ սոցա), պատեՀ Հա-
մարեալ զՀակառակութիւնն՝ արար իւր թիկունս զսուլ-
տանն Թուրքաց, և բաղբաղեալ՝ լինել 'ի զարմէ Գետա-
դարձին, որպէս և աթոռակալ նորին աթոռոյ, քարո-
զեաց զինքն կաթողիկոս և նստաւ 'ի Սեբաստիա։ Իսկ
ՅովՀաննէս և ոչ միոյ 'ի նոցանէ կացեալ պատկառ, և
ոչ իսկ Թագաւորին, «Մնաց 'ի Հռոմկլայն պանդխտա-
»բար, ըստ պատմչին, և ապրեցաւ անդ քաջութեամբ
»իւրով և իմաստութեամբ. և եկաց ընդդէմ ծածուկ և
»յայտնի Հնարից նորա»։ Իսկ իւր նախ ծածուկ և ապա
յայտնեալ Հնարքն, որով արդարև միասեաց Լեւոնի և
երկրին, այս եղեն, զի գրգռեաց զսուլտանն Իկոնիոնի՝
ԽոսրովշաՀ կամ Քէյխոսրու, և յարոյց 'ի վերայ Բեր-
դուսն ամրոցի, զոր և յեղակարծումն պաշարեալ բազ-
մութեամբ զօրաց՝ էառ, և ըմբռնեաց զտէր նորին Գրի-
գոր՝ որդի ուրումն Լեւոնի, ոչ գիտեմ յորմէ՝ տոՀմէ,
յերկրորդում ամի գժտութեանն (1208), որ տևեաց այլ
ևս ամս երկուս կամ երիս, մինչև մեռաւ կաթողիկոսն
Դաւիթ։ Յայնժամ, զի մի վերստին գայթակղութիւն լի-
ցի՝ նորոյ կաթողիկոսի ընտրութեամբ, փութացաւ իբրև
Հրեշտակ խաղաղութեան՝ խաղաղեալն այնու սիրով 'ի
մենարանի Դրազարկու, և Հայր տեղւոյն՝ Հեթում-Հեղի,
չոգաւ նախ առ Համբիրակ իւր (կաթողիկոսն) 'ի Հռոմ-
կլայն, և Համբոյր բարուքն և բանիւք՝ ամոքեաց զանուա-
նեալն Մեծաբարոյ. ապա եկն առ Լեւոն, նոյնպէս յաղ-
թեաց բազմաց յաղթողին. և արար Հաշտութիւն 'ի միջի
նոցա, փաստս փարելիս և պայմանս ինչ երկուստեք պա-
Հանջեալ, որպէս երևի. քանզի Լեւոն անդէն և անդ
Հրամայեաց Հանել զԿումարտիասն արգելեալս 'ի բան-
տին՝ զքեռորդիս կաթողիկոսին, յորոց երէցն և յառա-
ջադէմն Կոստանդ՝ անդէն վախճանեալ էր, թերևս և
Հեռի Հայր նոցա, զի ոչ յիշի ընդ Ճօսլինի և Պալտինի
արձակելոցն. այլ առ ժամանակ մի չետես զերեսս կա-
թողիկոսին, մինչև 'ի գալ ամին՝ կատարեալ սէր եղև
ընդ նոսա, ասէ պատմիչն. «և դարձոյց (Թագաւորն)
»զամենայն աւանս և զինչս՝ զոր առեալ էր 'ի կաթողի-
»կոսէն. և ուրախացան յոյժ Հեռաւորք և մերձաւորք»։

Դ. Մինչ չև էր Հաշտութեանն եղեալ՝ առ կենդանեաւ
Դաւթի կաթողիկոսի դէպ եղև խնդիր մի եկեղեցական,
յոր մխեցան երկրքին ևս կաթողիկոսունքն. Դաւիթ ըստ
եկեղեցական տեսութեան, ՅովՀաննէս՝ յաւէտ ըստ քա-
ղաքականին, խորագիտութեամբ իւրով։ Այս դէպք 'ի
Հանդէս Հանեն զայլ ոմն 'ի քաջանշան ազգայնոց ժամա-
նակին, նաև զքաջն 'ի քաջաց, թէպէտ տեղեաւ արտաքոյ
և Հեռի 'ի սաՀմանաց իշխանութեան Լեւոնի, այլ Համ-
բաւով կցորդակից և մտերիմ, և արժանաւորք երկոքին
առ երի կալոյ իրերաց. որոց եթէ տուեալ էր բաղդի՝
միանգամայն 'ի միում ընդարձակ ասպարիզի նաՀատա-
կել միով դիտմամբ, թերևս Հրաշափառագոյն Հանուրց
Հանդիսանայր յայնժամ Հայաստան աշխարՀ։ Զաքարիա
Սպասալարն մեծ էր այրն այն. առաջին պաշտօնեայ
զերաՀռչակ և զեղապանծ ԹագուՀւոյն Վրաց Թամարայ,
սուսեր և վաՀան ամենայն Կովկասու և վերին տանն
Հայոց։ Գրեաթէ 'ի միում ժամանակի երկոքին անզու-
գական արքս, Լեւոն և Զաքարէ, Հանդիսանային մեծա-
մեծ գործովք յերկուս ծագս թատեր Հայկական աշխար-
Հի. Լեւոն՝ նոր կանգնելով Թագաւորութիւն և գրեաթէ
նոր աշխարՀ յարդարելով Հայոց. Զաքարէ՝ զՀին աշխարՀ
նոցին զ'ի ցարուց Հետէ ընթադրեալն յԱրաբացւոց և 'ի
Պարսից՝ թափելով փոյթ ընդ փոյթ անվկանդ թրովն, և
ջախջախելով զշլիրս ամբարտաւանիցն բռնացելոց, և
զՀարկեցուցիչսն կարօտելոց՝ Հարկատուս կարգելով.
զամս քսան (1191–1210) անդուլ պատերազմելով 'ի դաշ-
տի և առ պարսպօք, և միշտ յաղթական, զամենայն ընդ-
արձակ և զՀայարուն գետաՀովիտն Երասխայ՝ թափեաց
զերծոյց յայլազգի լծոյ, և անդրագոյնս անցեալ՝ ընդ
արևմուտս, նեղեաց և ընդ Հարկաւ կացոյց զսուլտանն
Կարնոյ՝ զեղբայր Իկոնիացւոյն. ընդ արևելս՝ «աւերէր
»զտունն Պարսից մինչև ցԱրտաւիլ քաղաք, առնլով
»'ի նոցանէ զվրէժ արեան քրիստոնէից... զոՀ լինել
»իշխանացն որք 'ի Նախջաւանու եկեղեցին, և...
»սուրբ քաՀանայիցն որ 'ի Բագուան զենեցան[1]». և ընդ

1 Ըստ բանից Վարդանայ պատմչի (Գլ. ԶԳ), որ ակնարկէ 'ի կոտորած միաբանիցն Ս. ՅովՀաննու Վանաց յեղծօ ստրկանէ։

հարաւ՝ պաշարելով երբեմն զԽլաթ՝ զշահաստան Շահ-Արմէն կոչմամբ թագաւորեցելոցն. և յորժամ եղբայր իւր և գործակից Իւանէ Աթաբէկ՝ անզգուշութեամբ շրջելով անկաւ յորոգայթ և ըմբռնեցաւ, և մեծապէս խնդային պաշարեալքն, պատգամ առ նոսա առաքեաց Զաքարէ. «Եթէ հանէք զեղբայրն իմ 'ի քաղաքէդ » յայդմանէ (գերի առաքելով առ սուլտանս), կամ կո-» րուսանէք, զհող երկրիդ՝ 'ի Վրաց կողմանս տանիմ, և » անմարդ արարից զձեզ 'ի մարդկանէ: Եւ երկուցեալ » նոցա ... խնդրեցին զդուստր Իւանէի 'ի կնութիւն ... » առին պատանդս, և արձակեցին զԻւանէ »[1]: — Արդ այս այր կորովի սրտիւ և բարեպաշտ հաւատով, հանապազ արտաքոյ ոստանին 'ի դաշտս մարտից դեգերելով՝ ոչ կարէր ըստ եռանդուն հոգւոյն հաղորդ և աստուածայնոցն գտանել պաշտամանց. զի և վարդապետք ժամանակին՝ տգիտաբար անկանոն կամ անհրաման համարէին տանել 'ի բանակին սպասս պատշաճաւորս և պատարագ մատուցանել, որպէս Վրացիքն առնէին. և ընդ այս խանդացեալ գչարէր սպասալարն՝ վարիչ երկոցուն ևս ազգացն. եհարց զհայր խոստովանութեան իւրոյ՝ զգերահամբաւեալն 'ի ժամանակին յամենայն վարդապետս արևելից և զարժանաւորն՝ Մխիթար Գոշ. սա օրինաւոր եցոյց զխնդիրն, այլ զի 'ի վաղուց հետէ խափանեալ էր սովորութիւնն 'ի Հայս, ոչ իշխեաց ինքնին հրաման տալ: Յայնժամ գրեաց Զաքարէ առ կաթողիկոսն Յովհաննէս, ոչ գիտելով զմերժումն սորա, և առ Լևոն թագաւոր. որ և անդէն պատուիրեաց ժողով գումարել 'ի Սիս, հրաւիրեալ զկաթողիկոսն Դաւիթ, և նա զեպիսկոպոսունս իւր, զվարդապետս և զվանահարս. և այս եղև առաջին յեկեղեցական ժողովս Սսոյ: Հաւանեցան հարքն՝ խնդրոց սպարապետին, և կանոնեալ ութ գլուխս բանից, զորոց ընդերկար գրեալ և պատմեալ էր Վանական վարդապետ, աշակերտ գոլով յայնժամ Մխիթարայ Գոշի, և յորմէ համառօտէ Կիրակոս, առ որ և առաքեմք զգիտասէրս, արտաքոյ դիտմանս համարելով զերկրորդելն աստանօր, և զոր ինչ 'ի սակս այնոցիկ ժողովք եղեն յարևելս, 'ի Լօռի և յԱնի, և վէճք և հակառակութիւնք և երկպառակութիւնք, ոմանց հաւանել և այլոց ոչ, և Զաքարիայի՝ որ թագաւորական ունէր իշխանութիւն քան լոկ զօրապետութեան, կափել զանհաւանոն և վարել յօտարութիւն, ըստ ոչ կամաց վարդապետին իւրոյ Մխիթարայ Գոշի: Այլ որ 'ի ճահ պատմութեանս՝ է այս, զի ըստ կանոնացս՝ գրեցին կաթողիկոսն Դաւիթ և Լևոն՝ թուղթս, և առաքեցին 'ի ձեռն հրեշտակաց իւրեանց, պատշաճական նուիրօք: Աճապարեաց քան զնոսա խորագիտութեամբ՝ անկոչ «կաթողիկոսն Յովհաննէս՝ որ 'ի Հռոմ-» կլայն, վասն ընդ միտ մտանելոյ իշխանացն արևելից. » առաքեաց վրան մի գմբէթարդ եկեղեցաձև, և կազ-» մողս և յօրինողս նմին, և սեղան մարմարեայ, և այլ » սպասք պատարագաց. և եպիսկոպոս մի Մինաս անուն, » և սարկաւագս և դպիրս և քահանայս և գեղեցկա-» ձայն աստղս պատարագին. որք եկեալ եղեն յանդի-» ման սպասալարին 'ի քաղաքն Լօռէ, և առաջի կացու-» ցին նմա զհրամանս կաթողիկոսին և զթուղթ նորին » և զընծայս[2] »: — Այսպիսի ոք էր Մեծարարոյն այն, առաւել արդեօք վայելուչ յիշխանական՝ քան 'ի քահանայապետական բազմել յաթոռ. թէպէտ և յայնմ ժամանակի և վեհագոյնն 'ի քահանայապետս՝ առաւելեալն բազում բարեմասնութեամբք՝ վայելչագոյնս վարէր նովիմբ իշխանական ոգւով: — Յիշեցաք զթղթակցութիւն սոցա կանխաւ, որոց վերջին ծանօթ մեզ՝ է հրաւէրն Իննովկենտեայ յամի 1213 առ սոյն Յովհաննէս, հանգոյն այլոց եպիսկոպոսապետաց և եպիսկոպոսաց գալ 'ի (Դ) ժողովն գումարելի 'ի Լուգդոն քաղաք աշխարհին Փռանկաց, վասն սահմանելոյ և պատրաստելոյ զխաչակրութիւն (Ձ), որ և գումարեցաւ անդ յամի 1215 (11 Նոյեմբ.), նախագահութեամբ Քահանայապետին. բայց ոչ յիշի թէ և 'ի Հայոց ոք գնաց յայնմ սինհոդոսի. և չէ անհաւան, վասն յաճախ դեսպանութեան մերոցս յարևմուտս: Բայց Յովհաննէս 'ի հաշտութեանն ընդ Լևոնի՝ յառաջ և յետոյ, միամտութեամբ եկաց ընդ նմա և կարևոր սպաս և խորհուրդ մատուցանէր:

Ե. Զմի 'ի յոյժ կարևորաց 'ի գիտութիւն Լևոնի, այլ 'ի ծանուցն և յանբարեաց՝ մատոյց յառաջ քան զգահընկէցութիւնն, յամի 1205, գիտացեալ զանգէտս 'ի թագաւորէն, զանգօսնելի ինչ գնացս կենակցի նորին, զոր և ծանոյց զանխլակի: Տեսաք 'ի սկզբանն, զի ոչ սրտի ընտրութեամբ՝ այլ քաղաքական տեսութեամբ առեալ էր զնա Լևոնի 'ի կնութիւն, մինչ այն ինչ հասեալ էր յիշխանութիւն, և խիթայր 'ի Բրնձէն Անտիոքայ, և խնամութեամբն 'ի չափու ունել զսա խորհէր. այլ ըստ օրինի և 'ի պատուի ունէր զկինն, յորմէ մի միայն դուստր յիշի եղեալ նմա. զոր և կոչեաց յանուն մօր իւրոյ՝ Ռիթա: Ոչ է հարկ ասել որքան ծանրացաւմն եղև Լևոնի 'ի լսելն զանհանդուրժելին. և զի հանդերձ բնական իրաւամբքն՝ «էր յոյժ սրտային», ըստ պատմչին, զգիտակս գաղտնեաց կնոջն զմերձաւորս նորա՝ հրամայեաց կորուսանել. և զնոյն ինքն զկինն անհաւատարիմ, զոր յայնքան փառս բարձրացուցեալ էր և թագաւորութեանն հաղորդեալ, ըստ անարգանացն՝ և ինքն անարգօրէն ձեռացակոծ արար. և սաստկամահ իսկ լինէր արդեօք եղկելին, եթէ ոչ էր 'ի վերայ հասեալ Կոստանդնի Գունդստապլի՝ քեռի-որդւոյ և մտերմի Լևոնի, որ հազիւ թափեաց զխոշտանգեալն, և հրամանաւ թագաւորին արկ յարգելան տոհմիկ մարդկան՝ 'ի բերդն Վահկայ. իսկ զդստրիկն Ռիթա՝ առաքեաց Լևոն առ մայր իւր՝ տիկնաց տիկինն, սնուցանել և դաստիարակել: Սա միայն էր յայնժամ պայազատ Լևոնի. որ 'ի վաղուց հոգայր և տագնապէր վասն ժառանգի թագաւորութեանն, զոր այնքան երկայնամիտ ջանիւ 'ի ձեռս եբեր և այնքան բարեձևութեամբ բարձրացոյց. և էր նմա մեծ պակասութիւն սրտի՝ ոչ ունել զաւակ արու, և ոչ յուսալ ունելոյ յայնպիսի կնոջէ, զոր և հեռացոյց 'ի բնակութենէ. այլ ոչ մտաբերեաց առ ժամայն յայլ ամուսնութիւն, որ-

[1] Այս բանք են Կիրակոսի պատմչի:

[2] Այս ևս բանք են նորին Կիրակոսի աշակերտին Վանականի:

պէս ստգտանէն Կիրակոս, յամենայնի գովանի զնա գրտանելով, բայց ոչ յայսմ մասին. իբրու թէ առ տափանաց թողեալ զառաջին կինն և ածեալ երկրորդ. զի եթէ այսպէս ինչ խորհէր նա, վաղու իսկ արարեալ էր՝ յետ յայտնելոյ յանցանաց Անտիոքացի կնոջն. որ հաւանօրէն մեռեալ էր յարգելանին, մինչ յետ ամաց հնգից էած կին զկիպրացին Լուզինեան. և ոչ էր հնար ազատ լինել 'ի մեղադրանաց, թերևս և 'ի բանադրանաց Քահանայապետին Իննովկենտեայ, որ յոյժ վրէժխնդիր էր այսպիսի դիպաց: Իսկ յայն միջոց ժամանակի մինչ 'ի վարանս էր՝ մայր նորա Ռիթա թելադիր եղև նմա զթոռնեայն իւր Ռուբէն-Ռեմոնդ՝ զժառանգ իշխանութեանն Անտիոքայ, կարգել և իւրոյ իսկ թագաւորութեանն ժառանգորդ. որ էր յայնժամ (1209) ամաց իբր երկոտասանից, և հալածեալ 'ի կոմսէն Տրիպոլսի՝ կայր առ Լևոնի, և վարժէր յերկոսին ևս բարբառս՝ Փռանկաց և Հայոց, որպէս և 'ի սովորոյթս նոցին. զոր և անդստին 'ի ծննդենէ նորին խորհեցեալ էր Լևոնի որդեգրել, եթէ ոչ ունիցի զաւակ արու, վասն որոյ «և տայր սնուցանել զնա մեծաւ զգուշութեամբ». և ըստ զարգանալ նորա և աճել հասակաւ և կրթութեամբ՝ ևս քան զևս «զուարճանայր 'ի վերայ Ռուպինի. քանզի էր պատանի գեղեցկատեսիլ, հասակաւ երկայն, հերով խարտեաշ որպէս թել ոսկւոյ. ձիավարժ գովելի. իշխանական ձևօք պատկառելի, և անձամբ սուրբ»: — Արդ առաւել ևս հաստատեալ Լևոնի 'ի խորհրդեանն՝ ըստ խրատու մօր իւրոյ զգաստի, 'ի դէպ ժամանակի հանդիսական գումարման ուրեք՝ «եցոյց ամենայն հնազանդելոց իւրոց՝ մեծամեծաց և փոքունց, յայտնի ժառանգ թագաւորութեան իւրոյ զՌուպէն, զորդի դստեր եղբօրն իւրոյ Ռուպէնի». և զայս արար Լևոն՝ ոչ միանգամ, այլ «և երկիցս և երիցս յայլ և այլ ժամանակս՝ երդմնեցոյց տոհմին Ռուպինի զամենեսեան, զի նմա ծառայեսցեն յետ մահուանն իւրոյ»: Նաև երկիցս և ե-




227. Կնիք Ռուբինի-Ռեմոնդի Բրինձի Անտիոքայ.

րիցս մուտք մանկանն պայազատի յիշխանութիւն Անտիոքայ և 'ի բաց մերժումն 'ի հօրեղբօրէն, ոչ դրդուեցուցին զԼևոն. զի եթէ այսպէս և եթէ այնպէս՝ ասէր, Ռուբէն կալցէ զաթոռ իմ և յաջողագոյն ևս լիցի առ 'ի ձեռս բերել զիւր բնական ժառանգութիւնն, և ընդ միով գլխով զուգեալ երկոցուն իշխանութեանցն՝ լիցի պետութիւն հզօր. և ոչ շատ ինչ վարանէր ընդ օտարանալ ազգային հայկական հրահանգաց. քանզի 'ի բազում ինչ իրս հաւասարեալ էին երկոքին դրացի պետութիւնքն, և միաբանութեամբ իսկ հաւատոց սերտեալք, և զի Ռուբէն յարքունիս իւր սնեալ և դաստիարակեալ՝ յաւէտ հայօրէն վարժեալ լինէր քան ըստ Փռանկացն: Այլ ամենայնիւ հոգայր որդեգրաբար ընդունել և պահել զբարեբոյս պատանին յիւր յաջորդութիւն, և զամենայն որ արգել կամ ընդդիմակ ինչ նմա լինել կարծէին՝ 'ի բաց բառնալ: — Յոր սակս և 'ի գործ մի դժխեմ բերաւ Լևոն, զոր օրէնք կամ չարաչար սովորութիւն այնր ժամանակի արքունեաց Բիւզանդացւոց՝ արդարացուցանէին, յաճախ իսկ գործելով, այսինքն է խեղելով կամ խաւարեցուցանելով զթեկնածուս և զակնկալուս թագաւորութեան: Այսպիսի ոք 'ի Սիսուան մարթ էր միայն լինել յարուաց զարմին Ռուբինեանց, և ոչ ոք էր մնացեալ 'ի պանծալի տոհմէ անտի, բայց միայն յօտար անկողնոյ ծնեալ որդի մի Մլեհի՝ հօրեղբօրն Լևոնի, Գորգ անուն. որ զի և բերէր զբարս հօրն՝ խրոխտ գոլով և «այր զոռոզամիտ, և 'ի զինուորութեան արիագոյն, և սեղանով առատ, և բազումք յարեալ էին 'ի նա և սիրէին զնա. յորս և կասկածէր թագաւորն՝ յաղագս հակառակ յառնելոյ ժառանգութեանն, սպասելով դիպող ժամու». սակայն թէպէտ և օտարախառն՝ իբրև յարենակից իւր գնդայր 'ի նա, մինչև շրջեցին զնա 'ի մտաց արք քսուք, արծարծանելով զկասկածանս ինչ նորա, բարդելով՝ ո՛ գիտէ՝ որպիսի՛ բարուրս խիթալիս. և գողացան 'ի նմանէ հրաման՝ ունելոյ զնա և զրկելոյ 'ի լուսոյ աչացն. առաւել քան զնորա մարմնոյն՝ զիւրեանց խաւարեցուցանելով զոգւոցն տեսութիւն, և ստուեր

իրաւացի զԹագաւորան ածելով. բայց եթէ և գոյր ինչ նոցա իրաւացի փաստ բամբասանաց զԳորգայ՝ այն չէ ծանուցեալ. և առաւել զոհ համարի բարբարիկոն սովորութեան ժամանակին՝ քան արդարակարով իրաւանց:

Մինչև ցվերջին և յաղթական մուտն յԱնտիոք (1216), և հաստատելն զՌուբէն 'ի բռնաբարեալ գահ նորին, յայս միտս էր Լեւոն, պայազատ Ռուբինեանց և աթոռոյ Թագաւորութեան իւրոյ կարգել զսա. և զայս ոչ միայն առ իւրսն՝ այլ և առ օտարս հռչակէր, և առ նոյն ինքն Քահանայապետն Հռովմայ, յաջորդն Իննովկենտեայ (Ոնորիոս Գ). որոյ Թուղթ մի գրեալ առ Լեւոն յամի 1217 ('ի 25 յուլիսի) վկայէ այսմիկ, հանդերձ գովութեամբ վասն այսպիսւոյ դիտաւորութեան, որով՝ և պատրաստեալ իսկ էր նմա զԹագն արքայական [1]:

Զ. Եւ արդարև բազում ժամանակօք յառաջ քան զայս, այն է յամի 1210, յառաքելն զՀեթում-Հեղի՝ զառաջնորդն Դրազարկու՝ առ Իննովկենտիոս Գ, պատուիրեալ էր նմա երթալ և առ կայսր Ոթոն, և խնդրել 'ի նմանէ Թագ վասն Ռուբինի, որպէս ետ ինքեան նախորդ նորա Ենրիկոս Զ: Մի 'ի կարևոր դիւանական դիպաց է այս [2] դեսպանութիւն Հեթմոյ և ընկերացն (Արշիվարտայ և Բաւոնի), որոյ որպէս զիարդն ցարդ ոչ ծանուցաւ յարևմտեան դիւանաց և դարանից, այլ միայն վկայեալ է 'ի Վիլլեպրանտայ, և լաւ ևս 'ի մերոյս դեսպանէ, որ գրէ յաւարտ Թարգմանութեան գաւազանագրոց ինչ, զոր փոխէր 'ի հայ յուղևորութեանն՝ 'ի ծովու և 'ի ցամաքի. և հասուցեալ զկարգ կայսերացն յՈթոն՝ (զոր Ուդ կոչէ), յաւելու. «Առ որ ճանապարհորդեմ ես նուաստ Հեթի՝
» հրեշտակութեամբ՝ 'ի Թագաւորէն մերոյ Լեւոնէ, առ
» վերոյգրեալ կայսրս Ուդ. և 'ի վերայ ծովուս՝ 'ի նաւ-
» արկութեանս մերոյ՝ Թարգմանեցի զսա 'ի հռովմակա-
» նէն 'ի մերս, 'ի Թու. Հայոց ՈԾԹ: Իսկ արարեալ մեր
» առ ոտս նորա ամ մի և ամիսս երիս, դարձայց զմեզ
» հարկօք առ Թագաւոր մեր. արձակելով ընդ մեզ և
» Թագ արքայական՝ բազմածախ և բազմագին, յականց
» պատուականաց և 'ի մեծագին մարգարտից ընդելու-
» զեալ: Զոր բերեալ մեր՝ մեծաւ ուրախութեամբ ընկա-
» լաւ Թագաւորն մեր, և պսակեաց ընտիր պսակաւն
» զեղեցիկ զՌոբին, որդի դստերն եղբօրն իւրոյ և որդի
» Բրընձին Անտիոքայ Ռեմընդին. 'ի Թու. Հայոց ՈԿ.
» 'ի տօն Սուրբ Աստուածածնին, յաւգոստոսի ԺԵ: Եւ
» Թագաւորէ ընդ իւր՝ Հայոց, 'ի կամս Աստուծոյ»:

Բայց տէրութիւնն վերին՝ և Թագաւորին ևս Լեւոնի յետոյ, այլ ազգ տնօրինեցին: Քանզի անդստին 'ի ժամանակի դեսպանութեան Հեթմոյ, յորում և մեռեալ կարծի տարամերժեալ Թագուհին Լեւոնի, խորհեցաւ սա կրկին ամուսնութեամբք հաստատել զԹագաւորութիւն իւր և զԹոռնէին (Ռուբինի). և հաճեցաւ նմա և ինքեան կին ածել 'ի դստերաց ծանօթի և սիրելւոյ իւրոյ Թագաւորին Կիպրոսի, ուր և չոգաւ խօսել և ածել զընտրեալն: Հնգօք ամօք յառաջ վախճանեալ էր Թագաւորն այն, Ամաւրի, Թողեալ ժառանգ զՀիւկ Ա. զորդի իւր, զծնեալն յառաջնոյ կնոջէ իւրմէ յԵշիվայ Իպլինեան, յորմէ ծնեալ էր և զՀելվիս կամ Ելոյիսա. սա եղև կին Ռուբինի-Ռեմընդի, Թէպէտ և ասիւր յառաջագոյն եղեալ կին Եւտայ Տամբիէրի. վասն որոյ խնդիր եղև յատենի Քահանայապետին, և քննութիւնք յԱսորիս՝ յԱնտիոքայ պատրիարքէն, այլ օրինաւոր դատեցաւ ամուսնութիւն Ռուբինի: Վերջին կին (երրորդ) ածեալ էր Ամաւրեայ (յամի 1198) զԻզապէլ՝ ժառանգ Թագաւորութեանն Երուսաղեմի, զեղեալն նախ կին Կոնրադայ Մոնֆերրադոյ [3], ապա Հենրեայ Շամբանեայ բարեկամին Լեւոնի, և յետոյ ինքեան Ամաւրեայ, որում եբեր և զժառանգութիւն Թագաւորութեանն Երուսաղեմի. և ծնաւ զատ յայլոց՝ դստերս, զՍիպիլ և զՄելիսենտ. զվերջինս էառ իւր կին՝ Պեմունդ Դ հակառակորդն Ռուբինի և Լեւոնի. իսկ սա մերս Թագաւոր էառ զառաջինն, «զանուանեալն Սիպիլ,
» որ էր իմաստուն և համեստ և երկիւղած 'ի Տեառնէ»,
ըստ պատմչին մերոյ. բայց յայնժամ տակաւին տղայ էր, ոչ աւելի քան զմետասան ամաց, «և եբեր յայսկոյս
» ('ի Հայս), և արարին հարսանիս. և կային ուրախու-
» Թեամբ»: Պատմիչ մեր ոչ համահարս ասէ զկանայս երկոցուն փեսայացելոցն (Լեւոնի և Ռուբինի). բայց ըստ արեւմտեան պատմչաց՝ համահարք էին, որպէս նշանակեցաք, այլ ոչ համամարք:

Է. Յառաջ քան զնոր Թագուհին Հայոց՝ 'ի չափ հասեալ ամուսնութեան դուստր առաջնոյն՝ Ռիթա որ և Ստեփանիա, յամի 1214 կամ 1215 խօսեցաւ 'ի հարսնութիւն՝ միոյ 'ի հռչակաւոր գործօն արանց, մարտկաց, և անուամբ Թագաւորելոց՝ 'ի ժամանակին, այն է Յով-




228. Դրամ Յովհաննու Պրիենի.

հաննու Պրիենի, յազնուական տոհմէ Փռանկաց. «որ էր
» (ըստ մերոյս պատմչի՝ որ և Ըռէ Ճուան կոչէ զնա) այր
» սկայաձև, և աստուածպաշտութեամբ կատարեալ,
» քաջամարտիկ և արիագոյն 'ի պատերազմ». մարթ է

1 Nobili viro Raimundo Rupini nepoti tuo, Principi Antiochensi.... disposuisti eidem tamquam vero heredi regni Armeniæ assignare coronam, etc. — Honor. III. Epist. I. 560.

2 Ոչ նուազ քան զԹագ կարևոր համարեցաւ զայս, գերագոյն իմն իշխանութիւն նկատելով 'ի կայսր իւր ազգային, Գերմանացի ոմն բանասէր, ՇՈՒՊԱՐ անուն, որ յամի 1850 հրատարակեաց յօրագրի ուրեք բան մի, անուանելով. Նշանաւոր և ցարդ անծանօթ ծանուցեալ տեղեկութիւն զՌուբինէ, Թագաւոր Հայոց կարգելոյ յՈթոնէ Դէ. Besondere und bisher grösstentheils unbekannt gebliebene Nachricht von Rupino, welchen Kayser Otto IV zum Könige von Armenien gemacht hat. Այն ունէր եթէ զտեալ իցէ սորա վաւերականս ինչ 'ի դիւանաց, այլ տեսի զի միայն զՎիլլեպրանտայ յիշատակութիւնն գրէ և ոչ այլ ինչ, և ոչ զծնողս իսկ Ռուբինի ճանաչէ քաջ, և ըստ բազմաց՝ չփոթէ զժամանակ և զկրս Ռուբինի եղբօրն Լեւոնի:

3 Զծնեալն յայսմ առաջին ամուսնութենէ՝ զՄարիամ՝ էառ իւր կին Յովհան Պրիէն ընծայեալն Թագաւորութեան Երուսաղեմի. այն որ յետ մահուան սորա (1211) էառ 'ի կնութիւն զդուստր Լեւոնի դուստր Ռիթա (1214):

յաւելուլ թէ և փոքր մի բաղդախնդիր։ Ոչ անձամբ եկն սա 'ի Հայս՝ առնուլ զկինն, այլ առաքեաց հարսնածուս զկարգապետն և զասպետս Հիւրատանն. «և եկեալ » մայստրն Ոսպէթլուն՝ նաւուք՝ 'ի յԱքքայոյ, 'ի գետ- » բերանն Տարսոնի. և կապեցին զամուսնութեան պայ- » մանն՝ մայստրն և թագաւորն. և առեալ տարան պսա- » կեցին յԱքքա »[1]: — Իսկ՝ էաս մեծամեծ հարսանեացն և պաշտօնականի զատերն՝ ոչ ունելով յայնժամ Լեւոնի




229. Կնիք Գուարինի կարգապետի Հիւանդանոցին.

զանձ բաւական, էառ փոխ 'ի Գուարին կամ Կէրէն (Guarin de Montaigüe) կարգապետէ Հիւանդանոցին 20,000 ոսկի բիզանդ սառակինեան[2], Աքքեայի կշռով, և եա 'ի գրաւ զՃկեր գաւառ և զնաւահանգիստն Կալա- մելլա, ամենայն հասիւ և մտիւք նոցին, վասն երկեմենի միոյ։ Վկայք ստորագրողք դաշանցս՝ 'ի Լեւոնի կողմանէ էին, ժառանգ իւր Բրինձն Ռուբէն, Ատա որ է Օթոն տէրն Տիբերեայ, Ատան տէր Կաստոնի, Կոստանդին Գունդստապլ, Վահրամ Մարաջախտ, Պարոն Արշի- վարտ, հանդերձ այլովք, և իշխանք ոմանք Անտիոքա- ցիք. իսկ յԱսպետաց անտի երկոտասանք ոմանք՝ յա- նուանէ։ Այսպէս համարեցաւ Ռիթա 'ի թագուհի Երու- սաղեմի, և յաւելաւ Լեւոնի փեսայ մի հզօր. այլ և, ըստ ոչ կարծեաց նորա, ակնկալու մի ևս թագաւորութեան և ժառանգութեան իւրոյ. քանզի 'ի լսել Յովհաննու զմահ Լեւոնի, մինչ 'ի Պտղոմայիս կայր զչարեալ ընդ ձեռներիցութիւն Պեղագիոսի Նուիրակի Պապին, փու- թացաւ մեկնիլ անտի և գալ 'ի Կիլիկիա, կանամբն և դեռաբոյս որդեկաւն չորեքամենիւ, իբրու թէ սմա անկ էր ժառանգել զԼեւոն. և ասեն, կասկածեալ եթէ մայր սորա Ռիթա կամիցի կենախուզ լինել որդեկին՝ զի իւր լիցի ժառանգութիւնն, հարեալ զկինն մորակաւք կոչ- կոճն, և 'ի հարուածոյ անտի մեռեալ Ռիթայ. յետ հրն- գետասան աւուրց մեռեալ և տղայոյն, և այնպէս 'ի դե- րև ելեալ յուսոյ բաղդորսակ ծերոյն Բրիեննայ. զի ան- ցեալ էր յայնժամ զեօթանասնամենիւք, և ընդերկա- րեաց ևս զկեանսն մերձ ցինիսուն ամ († 1237). յետին Յիացորդ նշանաւոր շահատակաց, որք 'ի կիսոյ ԺԲ դա- րու ցայն վայր լցին անուամբք իւրեանց և պիտանի՝ և անպէտ գործովք՝ զժամանակն և զյիշատակարանս։

[1] Յիշէ և փռանկ պատմիչն Խաչակրաց, յամի 1215. «En celui point que il etait bail, esposa il Estefemie, la fille dou roi Livon d'Ermenie, que il avait de sa premiere feme. — Eracles, XXXI. 9. — Միւս ևս հին ժամանակագիր (Ernoul) ասէ վասն Յովհաննու, յետ մահուան առաջին կնոջն. « Li rois ni vaut mie estre sans femme, ains manda al roi d' Ermenie qu' il li envoiast une de ses filles, et il le prendroit a feme. Li rois li envoia, et li rois Jehan l' espousa.

[2]... « Ad preces meas assiduas, Dominus frater Guarinus de Monte Acuto, venerabilis Magister Sancte domus Hospitalis Iherosolimitani, accomodavit mihi viginti millia Bisantiorum sarracenatorum ad pondus Accon, pro supplendo matrimonio dilecte mee filie, quam tradidi in uxorem Illustri Regi Iherosolimitano. Unde apignoravi eidem Magistro et universis fratribus ejusdem domus totam terram Giguerii, etc. — Պայմանագիր Լեւոնի առ ասպետս Հիւանդանոցին. Cartul. 126.



230. Տապանաքար հայկական 'ի Կիպրոս.

# ԴՐՈՒԱԳ Ը.

*Վերջին գործք Լեւոնի. — Ա. Ծնունդ Զապելի եւ կարգել ժառանգ թագաւորութեան, խօսելով նմա փեսայ զորդի թագաւորին Ունգարաց. — Բ. Խնամք Լեւոնի 'ի պայծառութիւն երկրին. — Գ. Պաշարումն կապան բերդի 'ի սուլտանէն Իկոնիոյ. վերջին շահատակութիւն Լեւոնի, եւ ձերբակալութիւն իշխանացն գերելոց. — Դ. Ռուբէն մերժի եւ յերեւաց Լեւոնի։*

Ա. Ի չափ հասեալ դշխոյին Սիպիլլայ՝ ընծայեաց յամի 1215 կամ 1216, դուստր ծիրանածին, զփափկագոյնն փարազնուհեաց Սիսուանայ և զմենափառ, Զապել. որում, եթէ օրէն էր ասել, իբրև ծոցածին Լեւոնեան մարգարտի՝ բազումք ցանկացան, և ոչ հասին, այլ Հեթմեանն Հեթմոյ վիճակեցաւ յետոյ զուգապսակիլ և ժառանգել ընդ նմին զգահ և զփառս Լեւոնի։ Աստուածատուր իմն շնորհ համարեցաւ և սա, 'ի ծերութեանն՝ եթէ ոչ արու, գոնեա դուստր մի սիրասնունդ ունել, յոր վըստահանայր հոգւոյն՝ հաստատել զժառանգութիւն գահուն և բաղդին, որոյ վասն այնքան ամս հոգայր և վարանէր. և թէպէտ տեսաք 'ի վեր անդր՝ 'ի վաղուց ցայն ժամ ընտրեալ և ցուցեալ իւր յաջորդ զՌուբէն, այլ յետ վերջին անգամ և լիապէս հաստատելոյ զնա 'ի սեպհական աթոռն Անտիոքայ (1216), արհամարհութիւն ինչ կրեալ յերիտասարդէն՝ երկմտեալ էր 'ի նմանէ։ Ոչ պատմի ստուգիւ անգիտութիւն Ռուբինի, այլ համարին ոմանք եթէ 'ի գահակալելն՝ ճեպեցոյց զհայրագիր իւր և զամենախնամ դաստիարակն՝ փութով մեկնիլ յԱնտիոքայ [1], որպիսի և է մօք։ Արդ տեսեալ Լեւոնի զդըստրիկն կայտառ և բարենշան՝ մինչ խորհէր յանփորձ ճակատ նորին պատշաճեցուցանել զպսակն արքունի, ծանեաւ 'ի նմին խորհրդի լինել և զաւագանին իւր. որք, թերևս նոյնպէս խտրեալք էին 'ի Ռուբինէ, և համարձակ ասացին ցթագաւորն, եթէ՝ քանզի ետ քեզ Աստուած զաւակ ըստ սրտի քում, «արա զնա տէր ժառանգու- » թեան քո. և լոյծ զերդումն մեր զոր արարեալ եմք Ը- » ռովբինի, և կապեա ընդ դստեր քո. և մեք ծառայեմք » նմա՝ որպէս արու զաւակի. և բաւական է Ըռովբինի » զոր արարեր, և հաստատեցեր զնա յաթոռ հայրենեաց » իւրոց։ Եւ թագաւորն հաւանեցաւ 'ի բանս իշխանաց » իւրոց [2] »։ Թուի թէ ցայն վայր խղճէր Լեւոն՝ աղջկան միոյ և այն անտիականի՝ թողուլ զժառանգութիւնն. ոչ այնքան զի չէր օրինաւոր, այլ զի և բազմաց ցանկանալով թագուհւոյն և թագին, թերևս բռնաբարութեանց մարթէր լինել յետոյ առիթ. այլ այժմիկ տիրասիրութիւն պարոնայց իւրոց քաջալերեաց զնա, և այնուհետև խըկայր կանխել գտանել նմա փեսայ պատշաճաւոր և իւր յաջորդ արժանաւոր։

Թուեցաւ և յայսմ մեծի խնդրի՝ յաջողեալ բաղդին Լեւոնի, և յանկարծուց ծագաց երևեցուցանել նմա փեսայ թագազարմ. թէպէտ և ոչ այնպէս կատարեցաւ գործն, այլ ինքն Լեւոն այնու յուսով ննջեաց յանդորրու։ Քանզի զայնու ժամանակաւ՝ (1217) ըստ կանխաւ և երկարժամանակեայ ըղձից և պատրաստութեանցն Իննովկենտեայ հանգուցելոյ, չուժեալ արևմտեայց 'ի խաչակրութիւն, առաջնորդ կարգեալ էին միաբանութեամբ զԱնդրէաս Բ թագաւորն Ունգարաց. որոյ նաւարկեալ յաշնայնի տարւոյն 'ի Սպալատրոյ քաղաքէ Դաղմատիոյ, եհաս եւ 'ի Կիպրոս, և անտի չոգաւ 'ի Պտղոմայիս, ուր համախմբեցան ընդ նմին՝ ուղեկիցն իւր Դուքսն Աւստրիոյ Լէոբոլտ, փեսայն Լեւոնի՝ թագաւորն Երուսաղեմի, ասպետքն, նուիրակք Քահանայապետին, և ամենայն իշխանք երկրին Ասորւոց [3]։ Հարիւրաւոր յիշատակօք են իրացս յարևմտեայց, և չաւք լռեն. բայց են և որք յիշեն ընդ Խաչակիրսն և զմերս Լեւոն՝ եկեալ 'ի Պտղոմայիս, յօգնութիւն և յողջոյն փեսայի իւրում Յովհաննու թագաւորի. և իբրու նորադէպ իմն նշանակեն, զի չորք թագաւորք գտան անդ նիզակակիցք, Երուսաղեմին, Կիպրոսին, Ունգարացն և Հայոցս [4]. և միաբան խաղացին 'ի Պաղեստին 'ի Թաբոր լեառն, առնուլ զբերդն ամուր որ 'ի գագաթանն. և արիաբար հասեալք մինչև 'ի կատար լերինն և 'ի ստորոտս բերդին, յետս նհանջեալ 'ի բաց դարձան (3 դեկտ.), ոչ մի ինչ կարևոր պատճառ

1 Պարգևագիր Ռուբինի առ Գենուացիս (փետր. 1216), յայտ առնէ զի անդ յԱնտիոք էր Լեւոն, քանզի և ստորագրեաց նմին. իսկ 'ի միւսումն՝ որ յ՚7 ապրիլէ տարւոյն առ Պիզացիս՝ զի չէր անդ։

2 Զայսոսիկ գրէ արքունի պատմիչ մեր։

3 Պատմիչն մեր արքունի՝ փոքր մի խառնակ կամ կրկնակ թուէ զնիզակակիցսն. «Դուքսն Ալամանաց որ Աւստրիէն բազում զօրօք, և » ընդ նմա թագաւորն Ունգրաց Անդրէ՝ առկաւ զօրօք, և տուկ » ա՝ Աւստրիէն, և թագաւորն Երուսաղէմի Ըռէ Ճուանն, և տունն » Ֆրերացն՝ մայստրերովն, Դամփլն (Տաճարականք), և Ոսպիտալն » ամենայն գունդովն (couvent), և Լիկաթն 'ի Հռոմայ. ամենե- » քեան առքա գնացին յԵգիպտոս. և հասեալ 'ի Տամիաթ՝ ուր » ամրագոյն պուրճն էր շինեալ 'ի վերայ նաւահանգստին », և այլն։

4 ԷՐՆՈՒԼ (Ernoul) որ գրէր յամի 1228, ասէ. Apres vint li rois d' Ermenie à Acre, quant li rois Jehan ot sa fille espousée. Or furent à Acre quatre rois, et si ot moult gran peuples (de toutes terres), qui arives i estoit.

այնքան, զի ոչ միայն պաշտպանեսցի 'ի շրջակայ թշնամեացն, այլ և հերքեսցէ զնոսին, հատանելով կամ դողանալով 'ի սահմանաց նոցին, իբրև 'ի բռնաւորաց և յեկամտից, և ընդարձակեսցի իւրն շնորհատուր թագաւորութիւն։ Առ այս՝ թէպէտ ոչ սակաւ խափան եղեն յերկարեալ վէճք անտիոքեան իշխանութեանն, մանաւանդ սադրանօք կոմսին Տրիպօլեայ և Յովհաննու կաթողիկոսի՝ 'ի ժամանակի գժտութեանն, յարուցանելով ընդդէմ արքային զհզօր դրացին՝ զսուլտանն Իկոնիոնի, (որ և յաղմըկի ժամանակին կորզեաց զԲերդուսն 'ի Հայոց), այլ պարաղէտ աչօք արթուն կալով Լեւոնի՝ որոնէր ժամ պատեհ, յարձակելոյ և 'ի վերայ նորա, և 'ի վերայ նըմանեացն, երբեմն յաղթելով և կորզելով, և երբեմն ձեռնունայն դառնալով, բայց ոչ առանց տագնապեցուցանելոյ։ Յափշտակողն Բերդուսի Խոսրովշահ կամ Քէյ Խոսրու՝ ոչ իշխեալ յառաջ ևս անցանել 'ի սահմանս Լեւոնի ընդ արևելս, դարձաւ յարևմուտս 'ի վերայ նորահաստատ յունական կայսերութեան Նիկիոյ. և ել ընդդէմ նորա Լասկարիս փեսայացեալն յեղբօրդուստր Լեւոնի, գուցէ և գունդ օգնականի ունելով 'ի սմանէ, և մղեալ բռնութեամբ զպատերազմն եսպան 'ի նմին զխրոխտացեալն Խոսրով (1209)։ Եթէ ոչ ընդ սմա՝ ընդ յաջորդի նորին կոչեցելոյ Իզզէտտին Քէյքաւուզ՝ մարտեաւ Լեւոն 'ի նմին ամի՝ յամսեան օգոստոսի, օգնականութեամբ Հիւանդանոցի ձիաւորացն, որոց նախայիշեալ Կարգապետ ժամանակին (Գուարին կամ Կէրէն de Montaigüe), զոր Կարին կոչէ Լեւոն 'ի թղթին, ինքնին մարտակից թուի եղեալ, և յաջողութեամբ վանեալ և չարաչար հարեալ զբազմահոյլ բանակ թշնամեացն. ընդ որ՝ ըստ արժանւոյն՝ մեծապէս բերկրեալ Լեւոնի, պարգևեաց նիզակակցացն վաւերական կնքով և կրկին ևս վաւերականաւ Քահանայապետին Իննովկենտեայ, զՍելեւկիա բերդաքաղաք, զՆորբերդ և զԿամարտիաս՝ զերբեմն ժառանգութիւն զարմին Հենրեայ Սեբաստոսի, հանդերձ նահանգօք նոցին որ 'ի ցամաքի և որ 'ի ծովեզերին. և ծանոյց զայս Քահանայապետին յամսեան ապրիլի (1210), մեծապէս գովելով զձիաւորսն՝ մակաբէապէս արիացեալս, և արժանիս մեծաց վարձուց ըստ վաստակոց նոցին, այլ և 'ի շնորհս երեսաց Սրբազան հայրապետին, և յօժանդակութիւն հոգւոյ իւրոյ և նախնեաց իւրոց։ Եւ ոչ այսու շատացեալ՝ այլով թղթով (յօգոստոսի, 1210) ծանուցանէր Քահանայապետին զի խոստացաւ պարգևել նոցա և զԼարանտա քաղաք, զոր 'ի մօտի ունէր թափել յայլազգեացն, կամ թոյլ տալ նոցա ինքնին ջանալ կորզել զայն [1]։

Իսկ յերկրորդում ամին (1211), դարձեալ խաղաց Լեւոն 'ի վերայ Քէյքաւուզն Խոսրովու, ոչ միայնակ, այլ իբրև նիզակակից հօրեղբօր նորին և իւրոյ բարեկամի՝ Տուղրիլ շահի Կարնոյ. միաբան պաշարեցին զմեծ քաղաքն Կեսարիա, աղարտեցին զսահմանսն, և դաշամբ հաշտութեան և պարգևօք դարձան յետս։ Վիպասանն Վահրամ վասն այսր դիպուածի տողէ.

« ԶԿեսարիա զօրօք պատեալ
Եւ 'ի յառնուլըն մերձ ածեալ,
Ապա ոսկի բազում առեալ,
Եւ ընդ սուլտանըն դաշն եդեալ »։

Իսկ ոմն յիշատակագիր յառաջ վազեալ՝ առեալ իսկ ասէ զԿեսարիա. լաւագոյն գրէ Սմբատ. «ԶԿեսարիոյ սղարիլն, որ 'ի յառ էած. և դարձաւ ծախեց իւրեանց»։ — Յայսմ ժամանակի հաշտութեանն՝ տուեալ է Լեւոնի գիր ընծայութեան Յովհաննու Յեսուայ՝ Ասորւոց կաթողիկոսի՝ առ նոյն սուլտան, զի թոյլ տացէ նմա երթալ հաստատել զհոգևոր իշխանութիւն իւր 'ի վերայ կրօնակցացն որք 'ի կողմանս Կեսարիոյ։

Բազում ամօք յառաջ քան զայսոսիկ (1205), 'ի ժամանակի յորում ըստ հաճութեան կամաց Քահանայապետին՝ ամփոփեալ էր Լեւոն զձեռն իւր յԱնտիոքայ, պարապ գտեալ յարձակեցաւ 'ի կողմանս Ջահանայ, անդր քան զՄարաշ, 'ի վերայ գլխաւոր քաղաքին՝ որ մինչև ցարդ Ալպստան կոչի, ըստ մերոցս՝ Ապլաստա կամ Ապլասթա, և էր ընդ իշխանութեամբ Իզզէտտինի միոյ յորդւոց Խլիճ-Արսլանայ, որոյ թուի զրկեալ զմիւս ևս եղբայրն՝ Մէլիք, որում ձեռնտու լեալ էր Լեւոն 'ի մեռանել հօր նոցա և մաքառել ընդ միմեանս (1192), ընդարձակելով իսկ զվիճակ սորա. իսկ այժմիկ զչարեալ ընդ Իզզէտտին՝ ասպատակ սփռեալ աւերեաց զսահմանս մայրաքաղաքի նորին, զոր ոչ կարաց 'ի բուռն առնուլ։

Իսկ ինքն խաղաղացեալ երկուստեք, 'ի կողմանէ սուլտանացն և 'ի կողմանէ Անտիոքայ, յետ հաստատելոյն անդ զՌուբէն, ոչ թուլանայր և 'ի յետին ամս թագաւորութեանն՝ հոգալ և ամրացուցանել զերկիրն. վասն որոյ որպէս և 'ի սկզբանէ անտի տէրութեանն մինչև առ յապա՝ յաւելոյր զգուշութիւն յամրոցս և 'ի նրբուղի կածանս լերանց. որովք ըստ վիպասանին,

« Ամրոց բազում դըղեակ շինեալ
Եւ զԿիլիկիա շրջապատեալ »։

Յայտ է թէ և դիտանոցս կարգեալ էր, և զալստեան թշնամեաց՝ նշանակս աղդարարս. զոր ոմն ժամանակագիր ասէ՝ զանգակս բազմաթիւ բերդորէից, որոց ձայն առ ձայն հնչեալ՝ զօրաժողով առնէին [2]. բայց յաւելու ծանուցողն կամ գրող բանիս առ այլում, «թէ հաւանիս՝ ընկալ» զայս. յաւելցուք և մեք՝ զի մարթ էր և հրով տալ նշան. որպէս էր իսկ սովորութիւն առնել՝ 'ի նոյն կողմանս, մինչ ընդ Յունաց իշխանութեամբ էր երկիրն։

Ածեցուցանէր նմանապէս Լեւոն և զբարերարութեան տեղիս և զկրօնաստանս, և հաստատէր առատատուր

1 ... « Venerabiles Magistrum et conventum sancte domus Hospitalis, preterita estate, mense videlicet augusti, Sancte Sedis Apostolice amore ac reverentia, non solum nobis, verum etiam universe christianitati, magnum et necessarium contulisse succursum contra *infinitam* paganorum barbariem super nos et regnum nostrum aggregatam », etc. — Epist. Innoc. III.

2 Այս են բանքն. «Արիագոյնն Լեւոն տիրեաց 72 բերդից. և ասեն թէ 'ի 72 բերդն զանգակ կայր. նա երբոր պատերազմ լինէր՝ յայնժամ հնչեցուցանէին նախ 'ի Սիս. և 'ի ձայնէ նշանիցն ճանաչէին, և իւրաքանչիւր հնչեցուցեալ, որ լսէին ամենեքեան 'ի մի ժամու, և ժողովեալ գային, առանց մարդոյ (աղդարարի)։ Թէ հաւանիս՝ ընկալ»։

Թոշակօք. և զատ 'ի յոլով վանորէից՝ զոր չինեաց ամեն յիշատակագիրք, յաւելուն և զկարևորագոյնս, զԱղքատանոցս, ընդ որս « կազմեաց և զԳողեացն տունս, և » ռոճիկս պարգևեաց [1]. և բարութեամբ զաշխարհ իւր ե» լից... իբրև զդրախտ պտղաւէտեալ »: Շարայարող և աւարտող պատմագրութեան Միխայէլի Ասորւոց պատրիարքի, որ եթէ ոչ ականատես, այլ և չէր կրսեր քան զականատեսն, այսպէս 'ի ձայն մեծ գլխաւորէ զբանն՝ զիրացս կարևորաց. « Պսակաւորն Հայոց Լևոն՝ բարիոք » կարգաւորէր զաշխարհ իւր՝ լայն իմաստութեամբ, և » կարող ձեռօք ընդդիմանայր արտաքին թշնամեացն. և » խաղաղացաւ 'ի կեանս իւր, չինեալ բազում վանորայս, » և զյառաջագոյն չինեալսն ընդարձակելով. առատապէս » տալով զպէտս նոցա. այլ և Արձանագրով սեփականէր » նոցա գիւղս և ագարակս, այգիս և անդաստանս. և » գրեթէ եա նոցա զպարարտութիւն երկրին իւրոյ, և ա» ռատացոյց զռոճիկս նոցա պատրաստութեամբ 'ի ծովէ » և 'ի ցամաքէ. և ոչ միայն զհամազգի վանորեայսն այս» պէս փարթամացոյց, այլ և զայլալեզու քրիստոնէից, » զԱսորւոց և զՖռանկաց, այլ և զՅունացն և զՎրացն: » ... Բարեգութ լեալ առ ամենեսեան՝ բարի առնէր ե» կեղեցականաց և աշխարհականաց. և էին եկեղեցիք » նոցա պայծառք և անկարօտք՝ յանապատս և 'ի քա» ղաքս, սահմանեալ մոխիք, որ մինչև ցայսօր ժամանա» կի: Եւ այսպէս բազում դրուատիք կացեալ առ ամե» նայն ազգս՝ հանգեաւ 'ի Քրիստոս »: Գլխաւորք լևոնաչէն վանորէիցն վկային Ակներ և Գաչլու վանք, զորոց տեսցի 'ի Տեղագրութեանս: — Սիրտն այն երկաթի առոտխս և հակառակօղս երկրին և իշխանութեանն՝ կարի կակուղ էր 'ի կրօնս և 'ի կարօտեալս. և աւանդի խստիւ արգելեալ և օրինադրեալ, զի յաւուրս կիրակէի « Խափա» նեսցին արքունական հարկք և դատաստանք. զի ամե» նեքին պարապեալք աներկիւղ սրտիւ ժողովեալք յեկե» ղեցի՝ մատուսցեն աղօթս ընդունելի առ Աստուած: Եւ » եդ օրէնս, 'ի կիւրակէի ոչ ըմբռնել զոք, և կամ խնդրել » պարտս, և ոչ առնուլ զվրէժս չար գործոց »: — Ընդ աղօթից և դարմանոյ տեղեաց՝ ոչ մոռանայր մտացին այն և զմտաց բարգաւաճանս, յորդորելով զվարժարսն 'ի վանորայս և 'ի դպրատունս, ոչ միայն հայրենի հայկական լեզուի, այլ և օտարաց, մանաւանդ փռանկ և լատին լեզուաց, ըստ արժանի ընդարձակ թղթակցութեանց և կապակցութեանց իւրոց ընդ այլ և այլ պետութեանց:

Չիք երկբայել զի բազմապատիկ արկածք աշխարհին՝ զոր նա չինեաց և յետին ժամանակն աղարտեաց, ջնջեցին և թագուցին զյոլովագոյնս յայսպիսեաց, որպէս և յայլոց յոգունց յիշատակաց մտահարուստ թագաւորին. յորոց իբրև դոյզն մի նշմար յիշելի է զթարգմանութիւն թղթոյ Վահանայ կամ Յովհաննու եպիսկոպոսի՝ զգրեալն 'ի դիմաց Յունաց առ Զաքարիա կաթողիկոս վասն 'ի Քրիստոս հաւատոց. զսա եա Լևոն յեղուլ 'ի հայ, 'ի ձեռն գիտնականին և խոհականին և իւրոյ հօր խոստովանութեանն՝ Գրիգորի վարդապետի Սկեւռացւոյ. յորում իրի դիտելի է՝ ընդ բանասիրականին՝ և զկրօնականն. զի՝ որպէս յայտ է՝ խնդիր թղթոյն էր զբնութեանց Քրիստոսի՝ ուղղափառ դաւանութեամբ. և ընդ նմին զողջմտութիւն թագաւորին և զ'ի նոյն հաստատութիւն, անթերի ունելով և զվայելչութիւն ազգայնոց ծիսից և հանդիսից: Թերևս չափազանցութեամբ՝ այլ ոչ հեռի 'ի չափուց և 'ի ջանից Լևոնի՝ աւանդէ ժամանակագիրն, ըստ հնագոյն գրչի, եթէ « եա ժողովել զամենայն գրեանս յամենայն » տիեզերաց, անթիւ բազմութեամբ, և եա թարգմանել » զամենեսեան միանգամայն: Քանզի լցաւ ընդ ժամա» նակս նորա աշխարհն Կիլիկեցւոց իմաստութեամբ, և » բազմացան հետևողք թարգմանութեան. կէսք Գրագրու» թեան, այլք Ծաղկողք, ազգի ազգի գունով զարդա» րողք. և բազումք նկարողք և կազմողք. անուանի վար» դապետք. որոց վկայեն իւրեանց ձեռագիր գրեանքն, » որ կան մինչև ցայժմ, և կոչին Սսու, և են պատուա» կան »: Որպէս յոլովից, տի նա և ամենայն բարեաց և բարգաւաճանաց յաջորդաց թագաւորութեանն՝ պատճառք և սկզբնաւորիթ եղև Լևոն, զնոյն և յայսմ մասին ուսմանց և դպրութեան՝ արժան է համարել արմատ ապագայիցն աճեցմանց, 'ի պայազատս իւր և յամենայն Սիսուան. և զի ստուեր խաւարին ժամանակաց պօղեաց գրեաթէ զայլ ամենայն բարիս, և միան միայն ճաճանչք դպրութեան, ըստ վկայութեան յիշեցելոյ ժամանակագրին, մարթ է մեզ ասել, զի եթէ և ոչ այլ ինչ բայց զայս միայն լաւութիւն հայթհայթեալ էր Լևոնի և թողեալ մեզ զճրագ հանճարոյ և իմաստասիրութեան նախնեաց մերոց, արժան էր ունել զնա և պաշտել իբրև արդարև երախտաւոր մեծագործ *:

Գ. Ոչ պակասեցին Լևոնի ոչ կակղութիւն և ոչ պընդութիւն սրտի և կամաց, ոչ եռանդն և աշխոյժք հոգւոյ,

1 « Զի ըղձողին որ նախատեալ
Եւ յամենայն տեղեաց հերքեալ,
Զնոսա 'ի մի վայր ժողովեալ,
Բազմապատիկ բարեօք լցեալ ». — ՎԱՀՐԱՄ:

Իսկ ժամանակագիրն Կիլիկեցի կարճեօք գրէ. « Գողեաց տանն » տեղին՝ յիշլի այժմ Քօզան, թուի թէ նա է Գողեաց տունն, որ » է 'ի Հաճնոյ և 'ի Վագգայու (Վահկա) մէջն, ձոր մի, և 'ի ձո» րուն մէջն չէն ջրաղաց մի, մօտ 'ի սարօսն (?) հայի ընդ հարաւ »: Ի հարաւոյ երկոցուն յիշեալ աւանից նշանակի և 'ի քարտի մերում Գոռտ գեօղ:

* Արժան էր ողջոյն դրուագ բանի նուիրել 'ի քննութիւն և 'ի գովութիւն ուսումնական բարգաւաճանաց 'ի Կիլիկիա, յաւուրս թագաւորութեան Լևոնեանց և Հեթմեանց, եթէ կամեցեալ էր բովանդակել զտեսութիւն համօրէն պարագայի պայազատութեան նոցին. և մանաւանդ եթէ շնորհեալ էր մեզ զերծ գտանել 'ի ժլատ ժամանակաց և 'ի ձեռաց, և վայելել 'ի հրաւէր վերոգրեալ ժամանակագրին. որ յետ յիշելոյ զպատուական մատեանսն, յաւելու. « Թէ անհաւան լինիս՝ ե՛կ և տես, » և տուր փառս Աստուծոյ »: Թէպէտ և ճառեցաւ այլուր զուսումնական համբաւոյ Սսոյ (224), փոքր մի ևս ընդարձակել կամիմ զնոյն խնդիր, 'ի համօրէն Սիսուան ակնարկելով, և յաւէտ 'ի Գրատունս և 'ի Գրագէտս նորին:

Յայսմ յետին դասուէ գլխաւորքն և ծանօթքն մեզ յիշեցան ըստ կարգի Տեղագրութեանս, զորոց զանուանս միայն երկրորդել կայ ինձ աստանօր, և զմնացորդս կամ

և ոչ նրբութիւն և տեսութիւն մնաց. մի ինչ էր միայն որ երթայր և նուազէր, ըստ օրինաց ժամանակի և պատահարաց բնութեան. — աւուրք կենացն և առողջութիւն մարմնոյն, որ ոչ ևս ժուժայր հաւասարել անդուլ ներգործութեանց ամենաշարժ հոգւոյն. և թերևս 'ի նոյն ինքն 'ի բազմապատիկ կրթանացն՝ եհաս նմա ախտ կրթուցիչ ձեռացն և ոտից, որ էր հաւանօրէն յօդացաւութիւնն, ճիկրիս, ըստ Տաճկաց, որպէս գրէ իսկ Սմբատ.

զմոռացօնս ինչ գործոց նոցին, հանդերձ այլովք ևս անյիշատակ գրագիտօք. որոց ամենեցուն վեհագոյն կայ, որպէս և յայլ բազում դէմս, Լամբրոնեցին Ներսէս, գրեաթէ և հնագոյն ժամանակաւ. որոյ՝ և զատ յայնց յիշեցեալ գրուածոց (յէջս 90-91) գտանին և այլ ինչ ինչ յիշեալք յոմանց. որպէս, Կանոնն Եպիսկոպոսօրհնէից և Կաթողիկոսօրհնէից, Տօնացոյց, Վարք Գր. Նարեկացւոյ, Մեկնութիւն ուր խորհրդոց 'ի խնդրոյ Ատոմայ ճգնաւորի, Աւանդք քաղաքաց-շինողաց, 'ի խնդրոյ Աբուսայիտ բժշկի, և Վիպասանութիւն Վարուց Ներսիսի Շնորհալւոյ։ — Որիշ 'ի նմանէ և սակաւուք երիցագոյն, և ոչ հեռի 'ի սահմանաց Կիլիկիոյ՝ յիշի և համանուն ոմն Տէր Ներսէս, որ և եպիսկոպոս եղեալ է, որպէս թուի 'ի Դրազարկ. առաջնորդ տեղւոյն Տէր Բարսեղ (տես յէջ 231) տուեալ բերել 'ի Կ. Պօլսոյ զմեկնութիւն Կաթողիկեայց (Ոսկիբերանի?), տայր թարգմանել 'ի Լամբրուն ձեռամբ Գրիգորի դպրի, զոր կարծեմ հռչակաւոր Սկեւռացին (տ. յէջ 100-1) 'ի պատանեկութեան կամ յերիտասարդութեան տիս գոլով, և արդէն հմուտ յոյն լեզուի, և երկարակեաց լեալ վախճանն ևս ամս յետ այսորիկ. բայց զի տակաւին դպիր էր և ոչ քաջավարժ, յիշեալս այս Ներսէս 'ի յարմարեաց (յամի 1163) յետ մահուան տէր Բարսղի՝ ըստ քերթողական արհեստի », զթարգմանութիւնն զայն Կաթողիկեայց, որ անծանօթ է ինձ, և գրեաթէ զուգաժամանակ գտանի մեկնութեանն Սարգսի Շնորհալւոյ։ — Յիշեսցի և երիցագոյնն քան զնա և զայլս՝ Գէորգ Մեղրիկ (231)։ — Յետ սոցա որպէս արբանեակք լուսաւորք զմեծագոյն լուսաւորչաւ (Լամբրոնեցւով) ճառագայթեալք, Սամուէլ Վ. Սկեւռացի (98) կենսագիր նորին Սրբոյ. Դաստիարակն Յովհաննէս Վ. որոյ թէ և ոչ յիշի գրաւոր վաստակ, այլ գլուխ գործոց համարելի է զայնպիսին ունել աշակերտ. հարազատն իւր Հեթում-Հեղի, իշխան և կրօնաւոր. սպասաւոր իւր ողբասաց Խաչատուր (94. 98). ընդդիմախօսն Ենովք Վահկացի, որոյ գրեալ էր մեղադրանս Յունաց՝ վասն գերելոյն զՊարոն Լեւոն. ուղէկից իւր Գէորգ Վ., (447), որ թուի առաջին քերականն Սսեցի. քեռորդին իւր Ներսէս քահանայ (99), և Վասիլ կամ Բասիլ (99) վարդապետ ոմն՝ ընկերակից Գր. Սկեւռացւոյ կոչեցեալ։ — Այսոքիկ յ'ԺԲ դարու. 'ի հետևեալն՝ առաւելապէս զարգացաւ և ծաւալեցաւ դպրութիւն 'ի Սիսուան, ձեռնտուութեամբ Հեթմեան պայազատաց, առ որովք և լեզուաց հմտութիւն, վասն յաճախ ընդ արևմտեայս գործակցութեան և ընտանութեան։ — Նշանաւոր գրիչք և գիտունք, յորոց ոմանց միայն երկասիրութիւնք և այլոց ոչ՝ իցեն, Արիստակէս քերականն, և լրացուցիչ մեկնութեան Մատթէի՝ որ 'ի Շնորհալւոյն. Բարսեղ Վ. դեսպանն Հեթմոյ Ա, և եղբարք սորա Բարսեղ եպիսկոպոս՝ առաջնորդ Դրազարկու, և Յովհաննէս Րաբուն եպիսկոպոս՝ առաջնորդ Գոներոյն (144-6). և երիցագոյնն Սմբատ Գունդստապլ, որոյ քաջածանօթ են բազմադիմի արդիւնք, գրաւորք և սրաւորք (71-3)։ — Վարդան արքեպիսկոպոս (Սեպնայ? գրեալ) աշակերտ Կոստանդեայ կաթողիկոսի. — Յակոբ Վ. վասն կրօնական խնդրոց առաքեալ առ կայսրն Նիկիոյ. — Մխիթար Սկեւռացի (101), թարգման Հեթմոյ 'ի Թաթարս, և նուիրակ իւր 'ի Պտղոմայիս. — Անդրէաս իմաստասէր ատենադպիր նորին Հեթմոյ, յորմէ մնայ սուղ ինչ տոմարական բան. — Թովմաս Կիլիկեցին, որոյ ժամանակ ոչ քաջածանօթ (14), որպէս և ոչ Հեթում վարդապետի՝ որ յիշի ուրեք. — Վարդան Բարձրբերդցի (149). — Վահրամ Րաբուն գերահամբաւեալ 'ի ժամանակակիցս իւր, առ Բ Լեւոնիւ, որոյ խնդրանօք գրեաց զՎիպասանութիւն տոհմի և տէրութեան Ռուբինեանց, հետևողութեամբ վիպասանութեան Շնորհալւոյն. այլ ոչ վասն այսր համարիմ հռչակեալ զնա. գովելի ևս են արձակ գրուածքն ինչ և ճառք 'ի խորհուրդ Ս. Երրորդութեան և Մարդեղութեան, 'ի Յայտնութիւն, 'ի Համբարձումն Տեառն, 'ի բանն՝ Բղխեսցէ գաւազան, և այլն, « յորում աւուր օծեալ ձեռնադրեցաւ թագաւոր Հայոց » մեծ Լեւոն (Բ) ». 'ի Ծաղկազարդն, յՕրհնութիւնն Դեբովրայ, 'ի բանս ինչ Մարգարէութեան Եզեկիէլի, Պատասխանիք հարցմանց Հեթմոյ արքայի վասն Հրեշտակաց, վասն Ադամայ, և այլն. Լուծմունք գրոց Պորփիւրի. անշուշտ և այլ յոլով գրուածք. վասն որոց՝ ժամանակակից ոմն 'ի յիշելն զայլ ոք երևելի գրիչ՝ Սոսթենէս Րաբուն, ասէ նախ զնմանէ, և ապա զնմանէ. « Էր (Սոսթենէս) » վարժ և կիրթ յամենայն գիրս աստուածային՝ հնոցն և » նորոցս, և արտաքին փիլիսոփայիցն գերիվերոյ. որ և 'ի » ժամանակիս մեր և 'ի թագաւորութեան Լեւոնի (Բ) և » 'ի հայրապետութեան Յակոբայ, ոչ ոք է կատարեալ իբրև զսա յամենայն իմաստս, բայց 'ի մեծ Րաբունեաց » րաբունւոյն որոյ անունն Ցող է քաղցր, որ և Վահրամ » կոչի »։ Սոյն գրիչ յիշէ և զՍտեփանոս Վահկացի, որ հրամանաւ Սոսթենէսի վերակացու լինէր նորոգութեան Ս. Հոգի եկեղեցւոյ Սսոյ. իսկ յայլմէ գրչէ՝ վկայի նա գոլ երկասիրող կամ գրող Որարածոց գրոց։ — Յելս կոյս ԺԳ դարու և ցկէս ԺԴին, ծանօթք են, նախ թագաժառանգն այլ ոչ թագընկալ՝ Հեթում Բ, քերդուածովն վասն Թիւր կամ ուղիղ Զատկի, և թագազարմն Հեթում տէր Կոռիկոսի, զորմէ յերկար ճառեցաւ (337-9). — Գէորգ Սկեւռացի, և աշակերտ և ներբողիչ իւր Մովսէս. — մտերիմն արքայի և կաթողիկոս Գրիգոր Անաւարզեցի, զորոյ գրուածոց ճառեալ է 'ի Տեղագրութեանս (241-2), և յաւելցի աստանօր (զոր նոր գտաք յիշեալ) Մեկնութիւն Մարկոսի աւետարանչի, և Տեսութիւն յԵզեկիա, եթէ չիցէ մեկնութիւն Եզեկիէլի։ — Յիշելի է և Յակոբ կաթողիկոս, յաւէտ երախտաւոր վասն հրատարակելոյ զԸնդհանրականն Ս. Շնորհալւոյ՝ իւրով կոնդակաւ, և գեղեցիկ չարականաւ Ծննդեան Ս. Կուսին։ — Ի յաջորդաց սորին՝ Մխիթար, խոհական թղթովն որպէս և ժողովով (147). զայսր խնդրոյ միւս գրիչ է Դանիէլ Դավրիժեցի՝ Մինոր անուանեալ, զի էր 'ի Փրանկիսկեանց ուխտ մտեալ. — Ստեփանոս Գոյներ Երիցանց, « այն որ լի էր » և պատարուն յարհեստ գրչութեան և ընդ բնաւս հռչակեալ, (ըստ մերձաժամանակ յիշատակագրի), նաև » բանիւ կատարեալ և հոգւով լցեալ. որպէս աճա յայտնի » է իմաստնոց և ստոյգ գիտողաց. զի լի և կատարեալ

« Ի ծերութեան Լևոնի՝ որ յուստեալ? էր 'ի նկրիտեն, » և աւերեալ էր ձեռքն և ոտքն ». իսկ պատմիչն արքունի՝ Թագաւորացաւ կոչէ զախտն, ոչ գիտեմ 'ի պատիւ թագաւորին այսպէս զայն անուանեալ, եթէ մանաւանդ

այնպէս կոչիցի յարևելեայց, որ և Պարոնցաւ ևս անուանի 'ի գիրս ինչ մեր. և այս 'ի բազում ամաց հետէ ունէր զնա, բայց ոչ խափանէր 'ի վարչութենէ տէրութեանն և 'ի տեղափոխութեանց, մինչև ծանրացաւ ընդ

» էր արուեստիւ՝ 'ի բանս, 'ի լծորդս և 'ի բացատս և 'ի » տրոհմունս առոգանութեանց »: – Ստեփանոս Կրակցի արքեպիսկոպոս Տարօնի, յորմէ ունիմք զկանոն Օրհնութեան նաւու, և ընտանեկան սուղ յիշատակս. և յայլ ինչ գիրս ինքն կոչէ զինքն բանի սպասաւոր, բայց գրիչն ասէ զնա՝ մաքուր և անյաղթ գիտնաւոր և հռետոր բարունի: — Մի 'ի յետին (ժամանակաւ) գրչաց Բարսեղ Մաշկևտր վարդապետն է՝ 'ի Կիլիկիայս (408), և զուգաժամանակ նմին Յովհաննէս ոմն Սսեցի որ աշակերտ բանի ասէ զինքն և ուսեալ 'ի Մեծ Հայս առ ոտս Եսայեայ Նչեցւոյ և Մեսրովպայ Բաբունապետի: — Թէպէտ և ոչ յիշին հայրենիքն՝ և ժամանակն, այլ յանուանէն և յարուեստէն գուշակեմ կիլիկեցի լինել և զԿոստանդին Սրիկ, քաջ երգահան և տաղաչափ, որոյ կան ոչ սակաւ տաղք, և թուի կեցեալ 'ի սկզբան ԺԳ դարու, զի գտանին տաղքն 'ի տաղարանի գրելոյ մերձ 'ի կէս այնր դարու. 'ի նորին զարմէ՝ այլ կրսերագոյն է և համարուեստն իւր, որպէս երևի և համարիւն Սրիկ Ստեփանոս:

Արուեստ կամ հմտութիւն սոցա յետնոցս, որ է Երաժըշտութիւն, սեփական իմն շնորհ է դպրութեանց Հայոց Կիլիկիոյ, արժանի հետազօտութեան. նշանակեցաւ 'ի Տեղագրութեանս գլխաւոր երգարանն՝ Արքակաղնի վանք, և երգողքն ոմանք. Կիլիկեան ժամանակագիրն յայտնեաց մեզ և զայլս ոմանս, զորս և միահամուռ կարգէ, և « Նախ՝ Պատուելին Ներսէս, որդին Բ Լևոն թա- » գաւորին » որ (ծնեալ յամի 1279 և † 'ի 1301), 'ի յոյզս անդ արքունեաց և 'ի բարձաձիգ լինել եղբարցն՝ խաղաղականաց և հրեշտակայնոց պարապեալ հրահանգաց, և իբրև զմայլեալ իմն քաղցրութեամբ երգոցն և կատարելագունին փափագող երաժշտութեան, 'ի փթիթս անդ ծայրածաղիկ ծնոտիցն՝ փոխեցաւ յերկնայնոցն դասակցութիւն, ոչ գիտեմ որքան ինչ թողեալ յիշատակս յերկրի: — Յառաջ և յետ արքայորդւոյ երաժշտիս՝ հռչակեալ են երիցունքն Աւագ և Թորոս, որոց տեղի և գործք և ստոյգ ժամանակ՝ անծանօթ մնան. — Յակոբ երէց և եղբայր նորա Յովհաննէս կուսակրօն քահանայ 'ի Դրազարկ, յիշեալք ուրեք յամի 1313. — միւս Յովհաննէս կուսակրօն. — Յովհաննէս փակակալ Ակներոյ վանաց. — ևս և Լևոն. Ներսէս. Յովհան Աբեղայ. Կոստան դպիր. որոց անծանօթ են ո՛րն և զիա՛րդն. — Թորոս Թափրոնց աւագ երէցն արքունեաց և երբեմն դեսպան գնացեալ յԱնգղիա, † յամի 1342, ('ի 27 դեկտեմբ.), որպէս նշանակի յարքունի Յայսմաւուրս, և կոչի « հանճարեղ և իմաստուն երաժիշտ »: — Սիմէոն դպրապետ Դրազարկին. որոյ համանուն Սիմէոն փիլիսոփայ՝ յիշի յԱրքակաղնի, յամս 1258-60, որպէս և Մարգարա փիլիսոփայ 'ի Թիւրքթի վանս, յամի 1335. « և այլք բազումք », ըստ ժամանակագրին: — Ի բազմաց երգեցողաց անտի և ոչ յիշեցելոց 'ի նմանէ, միանգամայն և երիցագոյն՝ է Յովսէփ երաժշտապետ վանաց Դրազարկի, զորմէ այսպէս գրէ յամի 1241 Յովհաննէս ոմն հետամուտ այնր արուեստի. « Իմ յանձին կալեալ և հե- » տևեալ երաժշտական արհեստի... նախ գրեցի ուս- » մամբ և զկնի գրելով (զԳանձարան),... գտեալ աղէկ

» օրինակ յոյժ գեղեցիկ՝ զատն միոյ երաժշտապետի Յու- » սէփ կոչեալ, և կարի հասու ամենայն իմաստից երա- » ժըշտից՝ մինչև 'ի բաւանդակն, որ յաւուրս (մեր) ոչ » գտանի հանգոյն »: – Ցիչեցաք 'ի տեղագրին Արքակաղնոյ՝ զի երգարան Նրբից եղանակաւոր բանից՝ Մանրուսմունք կոչի, և ընտիր օրինակ՝ գրոցն Վաւծրնցի, ոչ գիտեմ յանուն տեղւոյ, եթէ հնոյ և քաջի ուրումն երաժըշտի մականուամբ, որպէս Խլկցին է (չարական) յանուն Խուլ Գրիգորի, յիշելոյ 'ի մէնջ (յէջ 105-6); և յիշելոյ աստանօր 'ի կարգս երաժշտաց և ճարտար գրչաց. զորոյ ժամանակ՝ չատ կանխել թուի ժամանակագիր մեր, 'ի յիշելն զգրաւորական ջանս Մեծին Լևոնի, և յարելով. « Ընդ այն ժամանակս էր պատուական վարժապետն և » Երաժիշտն և առաջին Քարտուղարն Սսոյ՝ Գրիգոր, որ » մակ Խուլն. որ, ասեն, թէ մոմ դնէր յականջն՝ առ 'ի » չլսել զբանս աշխարհականս, վասն այն կոչեցաւ Խուլ. » որ երարձ զաւելորդն, և զպակասն լցոյց զՇարակա- » նին. որ նոյն օրինակքն կոչին Խլկցի, զոր ստուգեալ է » նորա, և են Սսու բուն կոչեցեալ »:

Միւս ևս արուեստ Նրբալուր Խլին՝ Քարտուղարութիւն կամ Գրչութիւն յոյժ 'ի պատուի էր և քաջ յաջողեալ 'ի Սիսուան, 'ի դրան արքունի և 'ի վանորայս. որոյ և կենդանի իմն վկայք մնան ձեռագիր մատեանքն: Յանուանէ կարգէ ժամանակագիրն զոմանս 'ի նոցանէ, որք յետ կոյս ԺԳ. և յառաջին կէս ԺԴ. դարու կացեալ էին. Գրիգոր դպիր. Վասիլ դպիր. Հեթում երէցն. Կոստանդին Շարաճիւսանց. Սարգիս երէց՝ քեռորդի Ստեփանոսի Վահկացւոյ, որոյ ասէ աւարտեալ զգրութիւն հրաշազան և նկարազարդ գրոցն Արարածոց, զսկըզբնաւորեալն յաւուրս Բ Լևոնի և յանկ ելեալ յաւուրս Գին: Թուի Սարգիսս այս նոյն ինքն ծանօթն մեր ճարտար Պիծակն (235-6), և որդի վերոյիշեալ Խուլ Գրիգորի քահանայի. զորոյ և զմականուան ծագումն յայտնէ. որպէս թէ երբեմն « յ'առնելն ծաղկի և 'ի նկարելն, պի- » ծակ մի նստաւ հանդէպ նմա 'ի լուսամուտն, որ և » չուտ նկարեաց զնա. զոր տեսեալ մերձակայիցն՝ կար- » ծեցին թէ պիծակն եկեալ նստաւ. զոր ընդ ձեռօքն » վարելն նոցա զնա, ծիծաղեալ Տէր Գրիգորն. ապա գի- » տացին զիրն, և զարմացեալ կոչեցին զնա Պիծակ »: — Թերևս վերոյիշեալ Շարահիւսանց Կոստանդինն է քահանայն՝ զոր աշակերտ նորա Լևոն երէց, յամի 1306, կոչէ « անհաս և անհամեմատ գրիչ ». Նոյնպէս և զիւր հարազատ եղբայրն՝ « զՍիոն քահանայ, որ և մանկա- » գոյն խակակոտոր եղև »: — Եթէ ոչ անթիւ՝ մարթ է յոյժ բազմաթիւ ասել զճարտար գրագիրս Սիսուանայ, զորոց ոմանց և զճաշակ գրչութեանն ընծայեցաք ուրեք ուրեք 'ի Տեղագրութեանս՝ ճշգրիտ լուսատպութեամբ, որպէս և զփոքր ինչ նկարակերտութեանց վերոյիշեալն Սարգսի, և զԿոստանդեայ՝ արքանեկի Ս. Լամբրոնեցւոյն (85. 99): — Բազում անգամ անանջատ են յարուեստաւորս ձեռագրացն՝ երկոքին ճարտարութիւնքն, Գրչութիւն և Նկարչութիւն, որք բազում այն է զի Ծաղկողք և Ոսկողք կոչին. և յայսմ արուեստի գերազանցեալ երևին Սիսուանեայք քան զոր 'ի Մեծ Հայս. յիշատակին

ծերութեանն, և ոչ ևս կարէր այնուհետև անձամբ 'ի պատերազմ մտանել և զարհուրեցուցանել զթշնամիսն։

Զայսպիսի կարիս թագաւորին նկատեալ մերձաւոր թշնամւոյն, սուլտանին Իկոնիոյ, (որոյ 'ի վեց կամ եօթն ամաց հետէ դաշն հաշտութեան էր ընդ նմա), միանգամայն և զհամօրէն իշխանաց արևմտեայց խաչակրաց զբաղումն 'ի պաշարման Տամիադայ, 'ի վերջ կոյս 1217 ամին՝ դրժեալ դաշանցն՝ բազմագունդ բանակաւ մխեցաւ

և յոլովք 'ի սոցանէ. որպէս, ժամանակակիցն Կոստանդեայ՝ և աննման յայնմ արուեստի վկայեալ Գրիգոր զարդարիչ Պապառօնեան աւետարանին (74), «գեր 'ի վերոյ և անհաս 'ի սեռս մեր»։ — Ժամանակակից Պիծակին յիշի Յակոբ Նկարիչ 'ի Գայլու վանս. որոց մերձաժամանակ և այլք ոչ սակաւք։ Հնագոյնքն՝ առաւել հետևողք են Բիւզանդացւոց, յետինք՝ ազատագոյնք. այլ ոչ հաւասարեն գաղափարաց իւրեանց 'ի պատկերս կերպարանաց, մանաւանդ ձեռաց և ոտից, ճարտարագոյնք գոլով 'ի կերպարանել զհաւս և զհարսնահաւս և զչորքոտանիս, և ևս առաւել զպէսպէս զարդս և ձևս արաբիկս և ինքնահնարս, զորոց ոչ ներէ տեղիս երկարաբանել. որպէս և ոչ քննել և որոշել և զայլ և այլ ազգս դպրութեանց և մակացութեանց. յորս՝ եթէ ոչ տեսցի առաւելութիւն Սիսուանեայց քան զվարդապետաց Վերին և Մեծ Հայոց, թերևս կարգաբանութեամբ և ընտրութեամբ յառաջադէմք նշմարիցին, հաղորդակիցք գոլով արևմտեան ազգաց և դրակիցք Անտիոքեայց և Կիպրացւոց և պետութեանց ծովեզերացն Ասորւոց. յորմէ և յաճախութիւն ուսման և գիտութեան լեզուաց, հարկեցուցիչ առ այս ունելով և զընակակցութիւնն, զազգախառնութիւնն, զմուտ և ելս այլալեզու պաշտօնէից արքունի դրան։ — Յայսմ մասին լեզուագիտութեան ևս՝ զառաջնութիւն ունի Ներսէս Լամբրոնեցի, որպէս նշանակեալ է 'ի նորայն դրուատի։ Զուգակից նմին՝ որպէս յայլ ինչ մասունս՝ գտանի Գրիգոր Սկեւռացին 'ի հմտութեան Յոյն լեզուի. որում գիտակ և թարգման տեսաք ուրեք և զԿոստանդ երէց յամի 1332 (168)։ — Ի Լատինական լեզուի հմուտք՝ բաց յարքունի քարտուղարաց և դրչաց, դարձեալ յառաջադէմ գտանի Ս. Լամբրոնեցին, պէսպէս թարգմանութեամբքն. այլ և եղբայր նորին Հեթում-Հեղի, վերոյիշեալ Դանիէլ Մինորն, անշուշտ և այլք ոչ սակաւք. քանզի 'ի խնդրոյ Քահանայապետաց Հռովմայ՝ անդստին յաւուրց Մեծին Լևոնի կարգեցան վարժարանք այսր լեզուի։ — Յոլովագոյն ևս էին աներկբայապէս լսողք և խօսողք փռանկ լեզուի, և առաջին գրիչ և թարգման յայսմիկ՝ ճանաչելի Գունդստապլն Սմբատ, ապա եղբօրորդի նորա Հեթում Պատմիչ։ — Արաբ և Պարսիկ լեզուաց ևս, մանաւանդ առաջնոյն՝ կարևոր էր գիտութիւն յարքունիս, վասն ստէպ բանակցութեանն ընդ սուլտանս Եգիպտոսի և Իկոնիոնի և ընդ ամիրայս Հալպայ և Դամասկոսի. ծանօթ է թարգմանիչն Ստեփանոս քահանայ, որ հրամանաւ Ա. Հեթմոյ «թարգմանեաց 'ի Պարսից իմաստից զկերպ կերպ փոխատ չինելն և մխելն, այսինքն ջուր տալն», և այլն. ընդ նմին ասի թարգմանեալ և զարուեստս Դարբնութեան և Ներկարարութեան։ Ծանօթագոյն են և Բժշկարանք մեր, մեծագոյն մասամբ 'ի Պարսից և յԱրաբաց գրոց քաղեալք և թարգմանեալք, որք յիշեցուցանեն մեզ և զազգային Բժիշկս մեր, և ոմանք կարծին 'ի մարզից Սիսուանայ, այլ ժամանակք և գործք նոցին սակաւածանօթք. որպէս Սարգիսն, Սիմաւոն, Ահարոն և որդի նորա Ստեփանոս և Տոմ նոցա, Վահրամ, թերևս և Դեղին բժիշկն և Ճոշլինն։ — Զէր օտար 'ի Սիս և Ատրի լեզու, զի էին անդ վանորայք, եկեղեցիք և մեծատոհմ աթոռակալք Ասորւոց. յայն ժամանակս թարգմանեաց Գէորգ Վ. 'ի Քեսուն՝ զճառս ինչ Ս. Եփրեմի։ — Հարկ եղև ընտելանալ և թուրք և թաթար լեզուաց, որոց գիտակ գոլ երևի Մխիթար Վ. Սկեւռացի, հմուտն և լատինականին, զի էառ ընդ իւր զնա թարգման արքայն Հեթում՝ յերթալն 'ի Թաթարս. նոյնպէս Թուի և Բարսեղ Վ. յառաջագոյն դեսպան առաքեալ առ նոսա։ — Ի նորոց լեզուաց՝ յետ փռանկին չիք երկբայել՝ զի գէթ յԱյաս նաւահանգստի՝ ուր յաճախէին վաճառականք ազատ քաղաքաց և ընկերութեանց Իտալիոյ, լսիւր 'ի Հայոց և Իտալականն բարբառ։

Զանց արարեալ զքննութեամբ այլ ևս ազգ ազգ մակացութեանց և արուեստից զարգացելոց 'ի Սիսուան, ակն արկցուք կամ յիշեսցուք 'ի հարևանցի և զտեղիս ուսմանց և վարժից նոցին. որք են, նախ, աներկբայապէս՝ վանորայքն, և յաւէտ նշանաւորք 'ի նոսին Դրազարկն, Արքայկաղնին, Սկեւռայն, Մլիճն, Ակներ, Պլրձեր, Մաշկեւոր 'ի Սեաւ լերինս, և մերձ նմին և յԱնտիոքայ սահմանս՝ Յեսուեանց վանք, յորում անուանի եղեն առաջնորդն Յովսէփ եպիսկոպոս, և Գրիգոր Վ. Մարաշցի, և այլք յիշատակեալք 'ի Տեղագրութեանս։ Այլ առանձինն ևս յիշելիք են աստանօր Մեծքարն և Ջերմաղբիւր. զի յառաջնումն տեսաք Վարժարան ուսման մանկանց կարգեալ 'ի Լևոնէ Բ, որ՝ ըստ այլում գրչի «Վարդապետաց յարմարեաց տունս, ընդ որս և զՄեծքարն... և բնակեցոյց 'ի նմա կրօնաւորս». իսկ յերկրորդումն՝ Դասատուն կարգեցաւ 'ի թոռանէ նորուն՝ Դ Լևոնէ, խնամակալութեամբ Պայլի իւրոյ Օշնի, որպէս յիշէ Յակոբ Կրակկացի վարժապետ տեղւոյն՝ յամի 1328։

Մնայ արդ յիշատակել և զմեկենասս ուսմանց, այսինքն զբարգաւաճօղս և զխրախուսիչս, այլ և զգրասէրս և զգրաստացս. զի եթէ առաջինն՝ մեծատանց և հզօրաց շնորհ է, երկրորդն հասարակաց իմն տեսանի 'ի Կիլիկիայս, մանաւանդ յազնուականացն դասս, որոց հաշակագոյն լինին յիշատակք քան զռամկաց և փոքր մարդկան, ըստ հասարակ օրինաց աշխարհի։ Տեսաք 'ի սկզբան ծանօթութեանս զձեռնտուութիւն և խրախուսանս Մեծին Լևոնի 'ի բարգաւաճանս դրագիտութեան, մինչ զբաղեալն էր 'ի քաղաքական հոգս և կարգս։ Նոյն զգացումն և հանճար իմաստից և կրօնից տեսանի և 'ի նախնիս նորին Լեռնական իշխանս և նուաճօղս բարձանց Կիլիկիոյ. առաջին պայազատն Կոստանդին մարկիսն՝ շինէ կամ նորոգէ զԿաստաղօն վանս. որդի նորա մեծ սեբաստոսն Թորոս Ա, զԴրազարկ և զՄաշկեւոր. եղբօրորդի իւր համանունն Թորոս Բ, կրկին կանգնող պետութեանն՝ վըկայի ոչ միայն բանասէր, այլ և լուծիչ մթին բանից և մարգարէական իմն ունել տեսութիւն (չափազանցօրէն)։ — Այլ առաւել ևս փայլէ ուսումնասիրութեան և գրասիրութեան շնորհ 'ի զարմի անդ Հեթմեանց յաջորդաց Ռուբինեանց. յորոց գրեաթէ յամենայն պայազատաց՝ ժամանեալ հասան ցարդ ոմանց իսկական երկք, և յոլովից՝ վասն ինքեանց կամ վասն օտարաց գրել և յօրինել տուեալ մատեանք. զոմանս յայնցանէ արդէն յիշեալ է

'ի հիւսիսային սահմանս Սիսուանայ, և պաշարեաց պըն-դապէս զմեծ և զկարևոր բերդն Կապան, որ մի 'ի հի-մանց հաստատութեան աշխարհին և Թագաւորութեանն համարեալ էր. և արդարև ոչ փոքր լինէր կորուստ Հա-յոց, եթէ յաջողեալ էր սուլտանին ըստ փափագանացն, և ոչ կիսամանեայ: Քանզի իշխան ամրոցին այնորիկ Պարոն Լիւոն՝ քաջութեամբ ժուժկալեալ՝ ազդ արար առ Թագաւորն. և մինչ չև հասեալ արքունի զօրաց, պահա-

մեր 'ի ծանօթ մեզ եղելոցն, որ յայտ է թէ սակաւք 'ի բազ-մացն իցեն. որպէս, վարք Ոսկիբերանի գրեալ վասն Օշնի հօր Ս. Լամբրունեցւոյն. իսկ սա՝ որպէս բազում անգամ կրկնեցաւ՝ պարագլուխ ամենայն բանասիրաց տանս Կի-լիկիոյ՝ իւրով ձեռաք գրեալ է յոլով մատեանս, յոլովա-գոյնս ևս տուեալ գրել: — Ոչ անարժան նմին և եղբայրն Հեթում-Հեղի, եա գրել զգեղապաճոյճ աւետարանն նուիրեալ վանաց Սկեւռայ: — Նմանեալ նմին յետ դարու միոյ և դուստր Թոռին իւրոյ համանուան՝ Ալիծ՝ կին սե-նեսկալին Կիպրոսի, տայր գրել աւետարանս և կտակա-րանս ձեռամբ ճարտարին Ստեփանոսի Գոյն-Երիցանց, որք ցարդ պահին առ գաղթականս Հայոց յարևմուտս: — Մեծագոյն ևս տեսանի գրասիրութիւն և գրավար-ժութիւն յարքունական շառաւեղի Հեթմեանց բնոյն, որոց նոր նահապետ Կոստանդին Պայլ՝ նորոգեաց կամ յառաջացոյց զամենայն երախտիս Լեւոնի, ընդ քաղա-քականին և զբանասիրականն, յորս որդիք նորա պան-ծալիք մի քան զմի գերազանցեցին. առաջինն՝ քաջն Սմբատ Գունդստապլ՝ արժանաւորն մատենագրաց դա-սակցութեան, եթող մեզ և զիւրոց մատանց գիծս, և մատեանս գրեալս իւրովք ծախուք: Նոյնպէս և եր-կրորդն, որ է Բարսեղ արքեպիսկոպոս, որ և հեղինակ է Քերական գրոց: Ծանօթ ևս են կրսերոյն Յովհան-նու եպիսկոպոսի՝ առաւել քան զմտաւոր վաստակս, բազում մատեանքն ընդօրինակեալք, ևս և իւրով խրա-խուսանօք յօրինեալք, որպէս Գործոց Առաքելոց Մեկ-նութիւնն Սկեւռացւոյն: Չորրորդ և սակաւածանօթ եղբօր սոցա՝ Վասակայ կամ Վասլի տեառն Ճանճոյ, քաջի և բարեպաշտի՝ յիշին ընդ այլոց սրբազան սպասուց և աւետարանք գրեալք, և Սաղմոս մի առեննի: Իսկ վեհա-գունի հարազատացն՝ Հեթում արքայի, վկայեալ է զոյգ ընդ քաղաքական և պատերազմական հրահանգաց՝ և սէր մտաւորականին. «եա գրել բազում մատեանս, յո-»րոց բազումք կան մինչև ցայսօր (ասէ ժամանակա-»գիրն, զոր կարեմք և մեք կրկնել), և եա թարգմանել »այլ ևս բազումս». յորոց յիշեցաք վերագոյն դարուես-տականս՝ յարաբ կամ 'ի պարսիկ լեզուէ. որպէս և ըզ-գրագէտս և լեզուագէտս՝ ընկերս և ուղէկիցս նմին, ըզ-Մխիթար Սկեւռացի, զԲարսեղ, զՍտեփանոս, զԱն-դրէաս, և այլն. այլ և ինքնին ասի գրեալ յիշատակս զիւրոյ երկարաձիգ ուղևորութեանն 'ի Թաթարս, յորմէ ոչ սակաւ օգտեցաւ եղբօրորդի իւր համանուն՝ յԱրևե-լից պատմութեանն: — Զուգակից երկարժամանակեայ իշխանութեան Թագաւորին և կաթողիկոսն Կոստան-դին՝ նոյն գտանէր և ջանիցն, խնամարկելով 'ի բանա-սէրս, զի «գրասէր եղեալ (ըստ ժամանակակից յիշողի)՝ »եա գրել յոլով աւետարանս և գրեանս», ընծայելով արքայազարմիցն (յորոց ոմանք իւր իսկ սանք էին), և եկեղեցեաց վանորէից, յորոց ծանօթ են ինձ եօթն ա-

ւետարանք՝ պահեալք յայլ և այլ ձեռս, և մին 'ի մե-րում: — Առաւել քան զարքունի փառս՝ զիմաստասի-րութեանն ոգի ժառանգեաց պայազատն Հեթմոյ՝ Լե-ւոն Բ, թերևս գերազանցեալ զհանուրքք՝ յայսմ մա-սին, վասն որոյ և կոչեցաւ Գրասէր. զի «եա գրել բա-»զում պատուական գրեանս, որոց բազումք կան մին-»չև ցայսօր (ասէ ժամանակագիրն), և զայլ բազումս »ժողովեաց, և եա վերստին նորոգել 'ի ձեռս ճարտա-»րաց և վարդապետաց, զոր 'ի վատթար գրչաց այլայ-»լած էր. և դարձեալ զբազումս եա թարգմանել». — «Եւ պատուէր զուսումնասէրսն, և առանձին պարգևս »տուեալ՝ զոր վարդապետն էր ծանուցեալ. և անսպառ »հաստատեաց զայն և գրով արձանացոյց». և գլուխ այ-սոցիկ՝ Վարդապետարանն Մեծքար, յիշեալ վերագոյնդ: Ոչ միայն 'ի բնիկ երկրի իշխանութեան իւրում, այլ ա-ռաքէր 'ի մատեանիցն և 'ի Մեծ Հայս, և 'ի գաղթականսն՝ յարևմուտս, յորոց ճաչոց մի՝ յիշատակաւ իւրով՝ առա-քեալ 'ի Պերուճիա քաղաք Իտալիոյ՝ փոխադրեցաւ յետոյ 'ի հոգետունն Հայոց Հռովմայ*: Գտանին մատեանք գը-րեալք և 'ի խնդրոյ կնոջ սորին Կեռան Թագուհւոյ, որ և կրօնաւորեալ ասի և կոչեցեալ Թեֆանի: — Ոչ պակաս քան զհայրն գտաւ և անդրանիկ սորա Հեթում Բ, մեկե-նաւն Գր. Անաւարզեցւոյ և Գէորգայ Սկեւռացւոյ, որում եա յօրինել զՄեկնութիւն Եսայեայ. գտանին և շատք վասն իւր և վասն այլոց գրեալ մատեանք իւրովք ծախուք. իսկ իւրոց գրաւոր վարժից յաջողութեան վկայ միայն նա-խայիշեալ Յիշատակարանն վասն աւուր տօնի զատկին, վայելուչ տաղաչափութեամբ: — Ի բազմաթիւ եղբարց սո-րին Հեթմոյ՝ ծանօթ է ինձ, նաև 'ի ձեռին, Յայսմաւուրք մի (ըստ կարգադրութեան Անաւարզեցւոյն) գրեալ վասն Օշին Թագաւորի, յորում նշանակեալ են աւուրք մա-հուան արքայազանց: Օշնի որդի Լեւոն Դ ցուցաւ 'ի վեր անդր երախտագործ՝ հաստատութեամբ վարժարանին 'ի Ջերմաղբեր վանս. նորին հրամանաւ կան միան գրեալ Ասսիզքն Անտիոքայ և Օրինագիրք Սմբատայ, որ նոր յայտնեցաւ: — Ի զարմից եղբարց Ա Հեթմոյ և հօրեղ-բարց Լեւոնի Բ, ծանօթ ինձ միացորդք ստացեալ գրոց՝ են, Գիրք Սողոմոնի և այլ ինչ 'ի Ս. Գրոց, յորում գրէ մի յորդւոց Սմբատայ Գունդստապլի. «Ես Աւշին Սէ-»նէճալս ամենայն Հայոց որդի բարեպաշտ իշխանաց »իշխանին Պրն Սմբատ Գունդուստապլին Հայոց, զոր »հմտեցա գրոյս եւ յոյժ սիրեցի»... — Վասն եղբօրոր-դւոյ սորա երկրորդ Սմբատ Գունդստապլի՝ ծանօթ է գրեալ Աստուածաշունչ մի չքեղ: — Զատ 'ի չորից և հնգից եղբարց՝ որդւոց նահապետին Կոստանդեայ Պայլին՝ էին և այլ որդիք, յորոց մի Լիկոս. յանուն սորա չէ ինձ ծա-նօթ գրեալ մատեան, այլ վասն որդւոյ իւրոյ պատանեկի Պարոն Սիր Լեւոն կոչեցելոյ՝ կայ առ մեզ Աւետարանիկ մի գրեալ յամի 1256, որոյ գրիչն Յովհաննէս մաղթէ յի-

* Այս է յիշատակարանն արքունի, թէ և ոչ բուն ձեռնագիր Թագաւորին. «Լեւոն շնորհաւքն Աստուծոյ եւ ուղղափառութեամբ »Նորին Թագաւոր ամենայն Հայոց, որդի հանգուցեալ արքային »Հեթմոյ, վասն խնդրոյ Յոհաննէսի քահանայի, պարգեւեցաք »զժամագիրքս զայս իւր եկեղեցւոյն՝ Սուրբ Մատթէոսի աւետա-»րանչի, որ է 'ի Փերուժ քաղաք, 'ի յիշատակ մեր եւ նախնեաց »մերոց. 'ի Թուականութեանս Հայոց ԷՃԻԸ» (1279): — Յարքու-նական բանին յարի և յետագայդ՝ 'ի գրչէն.

»Յիշեսջիք եւ զիս զՀեթում նուաստ սարկաւագ. ով սուրբ ընթեր-»ցողք, եւ զեղբայրն իմ զԼուկաս քահանայ, եւ զԱւշին սարկ.»:...

պանօք բերդին և 'ի նոյն ապաստանեալ իշխանօք յարձակեալ 'ի դուրս, յանկարծուց պաշարողացն, վեր 'ի վայր պուղեաց զբանակ նոցին, և հուր արկեալ 'ի պաշարապատս բաբանին՝ աջողակի արութեամբ զերծաւ անդրէն 'ի ներքս [1]։ Ի նմին ժամանակի հասին և զօրքն արքունի, հեծեալք և հետևակք, առաջնորդ ունելով զերիտասարդ գունդստաբլն զԿոստանդին որդի քեռւոյ թագաւորին, (զոր՝ յետ մերոյս Լևոնի՝ միւս Լևոն մարթ է կոչել, և հաստատութիւն թագաւորութեան նորին ցամս յիսուն), և զմեծ իշխանն և զՊայլ՝ Ատան, և բազում այլ աւագ պարոնայս, ընդ որս և Կոստանդին որդի Հեթմոյ-Հեղեայ. և բանակեցան յանուանեալ տեղւոյն Շողական, առ համանուն լերամբ, զորոց փափագելի է ճշգրտել զգիրս։ Փութացաւ անդր դիմել և սուլտանն իւրայովքն, թուլացուցեալ զպաշարումն բերդին, և ճակատեցաւ հանդէպ նոցա 'ի տեղւոջ որ Եզտի? կոչիւր, 'ի նոյն սահմանս Շողականի [2]։ Ի վաղիւ անդր սահմանեցաւ պատերազմն, ոչ գիտեմ յորմէ՞ կողմանէ գրգռեալ. զառաջինն յաղթող գտաւ գունդն Կոստանդնի, վարեաց զընդդիմակացսն և հետամուտ եղև. զնոյն համարէր թէ

1 « Դուրս ելան, և զարկին իւրեանք, և զիւրեանց պահերն ընդ » աք տարան, և այրեցին զբաբնին. և այնով զերծան զետ քաջ մար» դիկ », որպէս էր և պատմողն ՍՄԲԱՏ՝ յայնժամ իբր տասնամեայ։

2 Ալ. Օր. Եւգէ. գրէ. ոչ յիշէ Արքունի պատմիչն զանուանքս։

չել « զբարի չառաւեղն, զորդւոյ Պարոնն՝ ըզՍիր Լևոն, » որ եռափափագ սիրով ստացաւ զսուրբ աւետարանս... » զսիրեցեալ պատանին՝ զՍիր Լևոն, որպէս զի աղօ» թիւք ձերովք Տէր Աստուած տացէ զնա ծնաւղաց իւ» րոց երկայն ժամանակս առողջութեամբ, եւ փրկեսցէ » յամենայն փորձութեանց »։... — Միւսոյ ևս եօթներորդի արքայեղբօր՝ Օշնի՝ անդրանիկն Հեթում տէր Կոռիկոսի՝ հանրածանօթ է և բազում անգամ յիշեալ առ 'ի մէնջ իբրև հեղինակ հռչակաւոր Պատմութեանն Արևելից կամ Թաթարաց, և այլոց գործոց, (337-340), որպէս և հմտութիւն նորա փռանկ լեզուի, և ընտիր Բէրչկարան մատեանն գրեալ վասն նորա։ — Յիշեալ է մեր (341) և զպերճագիր Մանրուսումն կամ Կցրդոց գիրք գրեալ վասն որդւոյ սորա Կոստանդին Գունդստաբլի. որոյ եղբայրն անդրանիկ Օշին երբեմն Պայլ՝ ձեռնտու և գործակից Լևոնի Դ.ի, երախտաւոր է հաստատութեան վարժարանին Ջերմաղբերոյ։ — Ութերորդ որդւոյ Արքայահօրն՝ Կոստանդեայ՝ որդի է Պաղտին մարաջախտ ստացող և նորոգող ճաշոցի գրելոյ ծախուք մեծի Գունդստաբլին, յորում գրեալ է և ինքն յիշատակս ինչ ընտանեկանս, որպէս յետոյ և որդի նորա Կոստանդին Բ. իսկ Կոստանդին Գ. թագաւոր՝ չափական բանիւ գրեալ է ողբս զմահուանէ եղբօրն (413)։ Գտանի առ մեզ և աղօթագիրք մօր նորա Մարիւն տիկնոջ դստեր Լևոնի Գունդստաբլի։ — Սոցին ժամանակակից էր՝ ոչ 'ի Հեթմեանց, այլ 'ի Քաջբերունեաց երկրէ, սակայն պաշտօնեայ արքունի, Տիվաճ-պաշի (486), Կարապետ ոմն, որ յաւուրց Օշնի արքայի բաւեալ է ցաւուրս Կոստանդնի Բ, և † յամի 1356. զմանէ աւանդէ ժամանակագիրն՝ յոյժ աղօթասէր զոլ, և յամի 1314 գնացեալ յուխտ 'ի վերոյիշեալ իտալական քաղաքն Պերուճիա, և տուեալ « գրել անդ Աւետարան մի պատուական. և զարդարեաց » ոսկի կողօք, և կատարեալ զուխտն դարձաւ 'ի Սիս, և » եդ յիշատակ զաւետարանն յեկեղեցին իւր յԵրկիքխո» րան Աստուածածին », ուր մնայր տակաւին աւետարանն՝ յաւանդել զայս ժամանակագրին, որպէս թուի 'ի կէս ԺԵ. դարու։

Այսքան յիշատակք գրասիրաց և գրոց (զոր ես համարիմ մի 'ի հարիւրոց ծանուցեալ ինձ), շատ և թերևս աւելի իսկ իցեն 'ի հաւաստիս ծաւալման դպրութեան և գրասիրութեան 'ի Սիսուան, և ոչ անհաճոյ հրապուրանաց արևելեան բանասիրաց մերոց՝ գալոյ այսր 'ի հետազօտութիւն. որպիսիք են հռչակաւոր վարդապետքն ժամանակին, զորս յիշեցաք 'ի ստորագրութեան Սսոյ (224)։

Հաճոյական այլ և աղուական ևս փաստս գրասիրութեան և գրագիտութեան՝ աւանդէ մեզ ժամանակագիրն Կիլիկիոյ, ականատես և շօշափող յոքնահոյլ մատենից գրելոց առ վերոյիշեալ արքայազամբք. առ որովք, ասէ, « Լի և անթերի էր իմաստութիւնն ընդ այն ժամանակս՝ » յաշխարհն Կիլիկեցւոց. մինչև կանայքն ևս գրէին և » ընթեռնուին. և մինն 'ի բազմաց այս է. քանզի 'ի հին » պատմութեանց Սսոյ լուայ, թէ Բարձրբերդի հաւ» տանիին քահանային դուստրն Զապէլ կոչեցեալն, սա » պաշտէր զՄանրուսմունս, և էր հմուտ ընթերցողու» թեան և արուեստին գրչութեան, և սիրէր կոյս մը» նալ...։ Ըստ այսմ օրինակի ասեն, թէ էր կոյս մի 'ի » Տարսոն, և անունն Ալիծ, որ և նա էր գրագիր յոյժ » հմուտ. գրեաց զայբուբենս, և ասաց թէ՝ Ով ոք որ » սմա նմանեցընէ, նա է իմ տեսոյն արժանի. որ և գը» րեալ բերին զերկուքն. ոչ հաւանեալ՝ ասէ.

Ծայրըն ձայլն, ծակըն ծայլն՝
Զի՛ նըմանիր գիրն Ալիծին.

» և դարձեալ ասէ վասն ուզողացն, թէ Ով որ գըրէ

Զծայրըն ձայլն, զծակըն ծայլն,
Նա կու լինի փեսայ Ալծին.

» և ոմն 'ի նոցանէ գրեալ եդիր. և հաւանեալ՝ ասէ.

Ծայրըն ձայլն, ծակըն ծայլն՝
Կու նըմանի գիրն Ալիծին »։

Յաւելու աւանդողն՝ եթէ համբաւ այսպիսեաց հուշակիւր « յարևելս. և լուեալ վարդապետք զայսպիսիս՝ եկին տե» սանել... զարմացան և ասեն, Իրաւի է զոր լուաքն, » և այլ աւելի. և ետուն փառք Աստուծոյ »։

Զոր և մեր մատուցեալ յօժարութեամբ, յաւելցուք և շնորհս մերոյս Ա. Լևոնի. որոյ եթէ չէր եղեալ որպիսի եղևն, և չէր արարեալ զոր արարն, ոչ այսքան բարգաւաճէին և դպրութիւնք 'ի Սիսուան. որոյ արքունիք և արքայազունք, (ոչ զանգիտեմ ասել), գերազանցեցին յայնժամ գրասիրութեամբ զամենայն արքունեօք դրացեաց իւրեանց յարևելս, թերևս և զամենեքումբք որ յարևմուտս. և եթէ հանգոյն սոցայսում վիճակեալ էր և մերոցս՝ ունել անքոյթ կայան, հեռի յասիական և 'ի լիբիական ասպատակաց, ցո՛ր վայր արդեօք բարձրանային բանական բարգաւաճանք պայազատաց Լևոնի. — զայս թողեալ իմաստասիրել անյաչաղ իմաստասիրաց, շատասցուք մնացորդօք մատենից ուսումնասիրաց մերոց՝ պսակաւորացն և աքեմաւորաց Սիսուանեայց, որք արդ միայն պատուական (ակն ունիմք թէ և յաւերժական) մնացուածք են փառաց, գանձուց, յաղթանակաց, հանդիսից, աղերսից, և համօրէն վայելչութեանց նոցին, և մեզ երկգիմի աւիթք՝ անօգուտ տխրանաց և օգտաւէտ սխրանաց։

գործիցէ և Սիր Ատան, միաբան շարժմամբ զմիւս թևն բաղխելով. այլ սա դանդաղեաց, կամ բնաւ իսկ ոչ խառնեցաւ 'ի պատերազմն [1]. յորմէ քաջալերեալ այլազգեացն՝ պաշարեցին 'ի թիկանց զգունդն Կոստանդնի. դարձան և հալածեալքն 'ի դիմաց, և 'ի մէջ փակեալ՝ շուրջ զեղան, նեղեցին, և ստիպեցին՝ փոխանակ անպուրծ մահուան՝ անձնատուր լինել. և այնպէս գերի անկան՝ ինքն Գունդստապլն Հայոց, և անուանակից իւր Կոստանդին Լամբրունեցին, Կիռ Սահակ տէրն Սիկոյ բերդի, Վասիլ Օքսենց [2], և այլ ևս իշխանք և ձիաւորք. յորոց և ոչ սակաւք անկան 'ի մարտին: Եւ սուլտանն առեալ զգերութիւնն՝ մեծաւ ուրախութեամբ դարձաւ անդրէն պնդել զպաշարումն Կապանին: — Վիպասանն Վահրամ համարի՝ եթէ Լևոնի արձակեալ զզօրսն՝ կամէր ինքնին այլովք գնդովք երթալ զհետ նոցա.

« Սակայն զօրացն անմըտացեալ
Եւ արքայի ոչ մընացեալ.
Այլ յերևել՝ 'ի մարտ մըտեալ,
Եւ յայլազգեացըն պարտեցեալ.
Ցոլովք 'ի սուր եղեն մատնեալ
Այլք կապով գերի վարեալ »:

Սակայն ոչ թուի ստոյգ 'ի սկզբան զայս կամեցեալ առնել Լևոնի, մինչ զերկոսին աւագագոյնս 'ի պարոնայցն և պաշտօնէից՝ յորս վստահ էր, բազմութեամբ զօրացն առաքեալ էր 'ի մարտ. այլ 'ի լսել զվատթարել բանակին և զվտանգ աշխարհապահ բերդին, մոռացեալ զտկարութիւն մարմնոյն, և յիշեալ զհնարսն՝ որով 'ի սկզբան անդ տէրութեանն աջողեցաւ զառաջին ընդդիմամարտն վանել, ժողովեալ զկաց մնաց զօրականին՝ երիտասարդօրէն երագութեամբ խաղալով ընդ զանխուլ ուղի՝ մխեցաւ 'ի սահմանս Կեսարիոյ, և սկսաւ ասպատակաւ կոխել, կողոպտել, աւերել, և շրջան առեալ դառնալ ընդ նոյն: Ընդ անակնկալ լուրն զարմացեալ սուլտանին՝ և զանգիտեալ եթէ գուցէ և զոր կալաւն կորուսցէ, շատ համարեցաւ զայն, և գիտացեալ զի այնուհետև անմարթ է առնուլ զԿապան՝ դարձաւ գերութեամբն յերկիր իւր [3]:

Ըստ բանից ոմանց 'ի պատմչաց մերոց այնպէս իմն թուի, եթէ շատացեալ սուլտանին գերութեամբ սպարապետին Հայոց և իշխանացն աւագաց, անփոյթ արարեալ իցէ զԿապանաւ. սակայն ոչ թուի հաւանական այսպէս առնել նմա՝ մինչ կայր 'ի վերայ պաշարմանն՝ և զօրքն մարտընչէին, և դարձան ևս յաղթութեամբ, աւարաւ և գերութեամբ, (յորմէ 'ի դէպ էր սրտաբեկ լինել պաշարելոցն և թուլանալ, գուցէ և լքանիլ), եթէ ոչ ահ և խէթ մեծ 'ի վերայ կայր՝ առ չհանել 'ի գլուխ զգործն, մինչ խորտակեալ էր զօրութիւն Հայոց. հարկ ուրեմն է հաւատալ, եթէ և նա ըստ ոչ կարծի իւրում՝ ետես զի չէ սպառեալ ոչ զօրութիւն զինուց Լևոնի և ոչ արիութիւն ոգւոյն. վասն որոյ ճեպեաց իբրև յաղթական և ոչ կորակոր դառնալ յետս. յուսալով, (և սյսմ հաւանիմ և ես), զի թէպէտ կարէր Լևոն զայն արշաւանս առնել, այլ ոչ առժամայն, և ընդդէմ աշխարհագումար բանակի սուլտանին ելանել կամ մխիլ 'ի սահմանս Իկոնիոնի. Մնայր արծարծելոյ զոգի զօրականին և լնլոյ զթիւ պակասելոցն, և 'ի դէպ ժամու խնդրելոյ զվրէժ իւր: Վասն այնորիկ և ոչ վաղվաղեաց խնդրել զերեթափ առնել, այլ մեծոգի գոռոզութեամբ եթող զայնպիսի պիտանի և սիրելի անձինս՝ 'ի բանտ և 'ի կապանս հակառակորդին. նովին իսկ շղթայիւք իւրոց գերելոցն սաստկագոյնս այսպէս ձաղեալ և թշնամանեալ զնա՝ քան եթէ յաղթեալ էր զինուքն: Մնայր թերևս և ելից պաշարման և առման Տամիադայ, յետ որոյ հարկաւ ցրուէին Խաչակիրքն, և մարթ էր նմա կոչել 'ի թիկունս զհաւատարիմ ձիաւորսն. այլ ընդերկարեաց յոյժ այն պաշարումն, և ոչ ժամանեաց Լևոն լսել զլուր առման քաղաքին. և զի զգոյր օր աւուր զնուազել զօրութեան մարմնոյն, զիջաւ վսեմաբար՝ յետ վեշտասան ամաց գերութեան պարոնայցն՝ խնդրել և թափել զնոսա. Նոցա իսկ թողեալ՝ վերաստանալ յապա ժամանակի զոր 'ի փրկանս նոցին տայր 'ի սուլտանն, զամուրն Լուլուայ և զանձաւաբերդն Լաւզատի՝ 'ի գետահովտին Խաւրիոյ [4], ոչինչ խնայեալ 'ի կարևոր ամրութիւնս տեղեացն. զի, որպէս խորհրդածէ որդի գերելոյն և յաջորդ՝ Գունդստապլն պատմիչ, « Լաւ է թագաւորի աղէկ ճորտ պահել՝ քան զայլ հարստութիւն ». և յայտնի արար ասէ՝ գլուխ գերութեանն (հայր իւր) զլաւութիւնն. զի « յետ մահուան թագաւորին Լևոնի » արար իւր փոխարէն Կոստանդին գունդստապլն՝ հարիւրապատիկ և իւր դստերն », Զապելի: Արձակումն գերելոցն եղև 'ի սկիզբն 1219 ամի, սակաւ ամսօք յառաջ քան զվախճան կենաց Լևոնի:

Դ. Բայց մնայր սմա և 'ի նշխարեալ աւուրս կենացն՝ միանգամ ևս հաւաստել զստուգութիւն զաղփաղփուն բաստից աշխարհի, զոր հանդերձեալ էր 'ի մօտոյ ամենևին անպատրուակ տեսանել: Նախ, Ցովհաննէս կաթողիկոս՝ որ այնքան մեծաւ խնամով և բազում ծախուք,

1 « Եւ Պարոն Ատանի զօրքն չօգնեաց իւրեանց »: — ՊԱՏ. ԿԻԼԻԿ:

2 Ցօրինակին գրեալ էր « զԱսել զՕքսենց »:

3 Պատմիչն Կիլիկիոյ և Սմբատ՝ ոչ յիշեն զայս յետին արշաւանս Լևոնի, այլ Վահրամ, ժամանակագիրն և հին յիշատակագիրն. սա ասէ. « Իսկ արքայն Լևոն առեալ զմնացեալ զօրս իւր՝ ասպատակեաց յաշխարհն Գամրաց, և բազում ոճիրս գործեաց. և առեալ » զառ և զաւար՝ դարձաւ 'ի Կիլիկիա. զոր լուեալ Քայքաուզն՝ եթող զԿապանն և զերկիր թագաւորին, և ամօթով դարձաւ յաշխարհ իւր »: Զնոյն գրեթէ ոտնաչափէ առաջինն.

« Արքայն այսու ոչ տխրացեալ,
Եւ ոչ վատթարս ինչ խորհեցեալ.
Այլ զմնացեալըն ժողովեալ՝
Եւ 'ի Գամիրս ասպատակեալ.
Ըզսուլտանին աշխարհ գերեալ՝
Եւ աւարաւ բազմաւ դարձեալ.
Զհամբաւ շարեացըն նա լըւեալ
Եւ յիւր աշխարհըն անդրէն դարձեալ »:

Պատմիչն մեր չտայ ինչ պատճառս փութով դառնալոյ սուլտանին. իսկ Սմբատ ասէ, 'ի տեսանելն զայնքան գերութիւնն բերեալ, գոհութեամբ ասաց, թէ « Այս ինձ հերիք է. և չէառ զԿապանն, և « ելեալ գնաց յաշխարհ իւր »:

4 Այսպէս հաւաստեն Պատմիչն արքունի և Սմբատ. իսկ յիշատակագիրն վերոյիշեալ՝ ասէ. « Ընդ սակաւ գնոյ դարձոյց զիշխանսն, և սէր երդմամբ եդ ընդ արքային Լևոնի »: Նուազագոյն ևս Վահրամ.

« Ընդ արքայի երդումն եդեալ,
Եւ ըզգերեալըն դարձուցեալ »:

և սրբազան սպասուց սպառմամբ՝ չինեալ, Նորոգեալ և ամրացուցեալ էր զՀռոմկլայն, (որ և յետ այնր աւելի քան զեօթանասուն ամ Նիստ եղև կաթողիկոսաց), որով երբեմն թուէր ընդդէմ Լեւոնի իսկ կալ և ժուժկալել, այժմիկ անյոյս լեալ 'ի կարելոյ պահել զայն՝ յերեսաց այլազգեացն որք սպառնային և Նեղէին զնա, եկն ապաւինեցաւ առ Նոյն Լեւոն, եթող 'ի Նա զհռչակաւոր զայն գահ, և փոխանակ այնր ընկալաւ յիւր աթոռ, առաջՆորդարան և կալուած՝ զմեծ մենաստանն Գրազարկու. զի ամօք յառաջ վախճանեալ էր տէր Նորին և հին տէրն Լամբրունի՝ Հեթումն - Հեղի։ Այլ զի և ինքն Յովհաննէս ոչ քան զմի ամ յերկարեաց զկեանսն յետ Լեւոնի՝ յարքեպիսկոպոսն Սսոյ երևի վերադարձեալ մեծի վանացն, և Նորոյ կաթողիկոսին Ա Կոստանդեայ դարձ արարեալ 'ի Հռոմկլայն։ Սակայն յայսմ պահու՝ յորում ամենայն ինչ մերձ էր 'ի սպառել վասն Լեւոնի, տակաւին դողդոջուն անձամբ, այլ անընդոստ սրտիւ՝ ունէր և վստահանայր պահել անհուպ յօտարին բռնութենէ՝ և զայնքան հեռաւոր բերդ, իբրև զմի յիւրոցն մերձաւորաց։

Բայց ազդողագոյն և յետին ցոյցք յեղյեղուկ բաղդին՝ եղև այն, վասն որոյ յերկարագոյնս աշխատ եղեալ էր Լեւոն 'ի կեանս իւր, և որով ծանօթագոյն եղև համբաւ Նորա առ արևմտեայս. խէթ և խութն այն Անտիոքայ, որ իբրև յալիս հանդարտեալս ծածկեալ էր յերից ամաց հետէ և իսպառ հետախաղաղ կարծիւր, յանկարծոյն և 'ի տարաժամու՝ միանգամ ևս և յետին անգամ՝ 'ի վեր երևեցաւ, և այլ ոչ ևս կրկնեաց։ Մի ոմն յիշխանաց և պաշտօնէից Անտիոքայ կամ Տրիպօլեայ, Գուլիելմ Ֆարապէլ մականուն, 'ի Բիւյի (Puy) զարմէ փռանկաց, որոյ Նախահարք ընդ առաջին Խաչակրաց եկեալ էին, և յարեալ 'ի տեարս Տրիպօլւոյ՝ իբրև լիճ պարոնայք, և չատք զսպարապետութեան պաշտօն վարէին, որպէս և սա թուի, գաղտ եդ բանս ընդ կոմսին Պեմունդի, և մատնեաց 'ի ձեռս Նորա զԱնտիոք, անպատրաստ գտեալ զՌուբէն։ Ձեն ծանօթ մանր հանգամանք իրացն, այլ գլուխ և աւարտ գործոյն եղև 'ի բաց մերժումն Ռուբինի 'ի գահէն և 'ի քաղաքէն. Թերևս ինքնին իսկ անճարաբեալ հեռացեալ անտի՝ փութացաւ անկանել 'ի գիրկս հաւուն իւրոյ Լեւոնի, և հուսկ անգամ խնդրել զհզօր օգնականութիւն Նորա. ժպրհեալ, որպէս ասեն ամենայն յիշողք իրացս, 'ի մոռացօնս արկանել զանարգանսն՝ զոր արարեալ էր այնքանոյ բարերարի իւրոյ և խնամողի, որոյ երախտիք առաւել էին քան զմարմնաւոր ծնողաց։ Այլ անագան յոյժ և վայրապար բաղխէր զդուռն՝ որ ոչ ևս էր Նմա բանալոց։ Ոչ միայն անձամբ օգնել չկարէր այնուհետև Լեւոն՝ հիւանդագին և մերձեցեալ յելս իւր, այլ և ոչ 'ի ձեռն իւրայոցն կամեցաւ։ Եւ բիտասարդն ապերախտ և տարաբաղդ՝ յայտ է թէ իւրով անզգուշութեամբ վրիպեալ էր զայս Նուագ. և զի արդէն 'ի չափ հասեալ էր (գոլով իբր ամաց 22 կամ սուղ աւելի), ինքեան միայր հնարս գտանել՝ ճարտարութեամբ կամ քաջութեամբ, զորոց բազում անգամ տեսեալ էր 'ի Լեւոն զփորձ և զօրինակ։ Եւ ոչ զերեսս Նորա կամեցաւ տեսանել թագաւորն, և յուղել զաղիս իւր, որ այնքան ամս կղկաթ կաթոգի լինէին 'ի Նա՝ իբրև յորդի սիրոյ, զրկօք գգուեալ և յարքունի բարձս սնուցեալ, թագիւ պսակեալ և թագաւորութեան պատրաստեալ։ Լիուլի տուեալ էր Նմա բաժինս. և այլում ժառանգեցուցեալ զաթոռ իւր, և միայր օր յորէ դարձի դեսպանին իւրոյ՝ Ջօսլընի՝ տեառն Թլին Համտրնոյ, յամէ հետէ առաքելոյ ընդ Անդրէի թագաւորի Ունգարաց յերկիր Նորա, առ 'ի բերել զողայ որդի Նորին 'ի փեսայութիւն դստեր իւրում Զապելի, և 'ի թագակցութիւն։ Եւ Ռուբէն ունայնաձեռն յանմատոյց դրանց թագաւորին, և դիմեաց երթալ առ լիկաթ Քահանայապետին յԱկորիս կամ 'ի Տամիադ, և զնա ունել միջնորդ և պաշտպան. 'ի զուր։



231. Անտիոքեան դրամ կարծեցեալ Զապլունի դստեր Բ Լեւոնի *.

* Այսպէս կարծեօք առէ հրատարակողն դրամագէտ Շլումպերկեր. զի փոխանակ անուան 'ի բնակողման դրամոյն դրոշմեալ է միայն S տառ, սկզբնագիր Sibil անուան, որպէս կոչէր դուստր պայլուհին այն Կիպրոսի, կին գահառէրն Ամաւրեայ. որք ընդերկար ամս վէր 'ի վայր խռովեցին հակառակութեամբ զդրակից պետութիւնս Կիպրացւոց և Հայոց, և երկոքին ևս եղերական մահուամբ զրաւեցան. Թերևս ողջերգելի քան զայրն գտեալ Զապլուն, անդրանիկն 'ի ծնունդս բազմորդւոյն Լեւոնի Բ, և յետ ամենայն եղբարցն բռնամահ լեալ 'ի բանտի, 'ի տիրապղուխ պայլութեան Օշնի տեառն Կոռիկոսի, 'ի տիս տղայութեան զոլով Լեւոնի Գ։

# ԴՐՈՒԱԳ Թ.

*Ա. Հիւանդութիւն Լեւոնի եւ Մահ. — Բ. Թաղումն. — Գ. Ակնկալուք բազին. — Դ. Ընտրութիւն փիլիպպոսի Անտիոքացւոյ 'ի փեսայութիւն Զապելի, եւ 'ի թագաւորութիւն Հայոց, եւ մերժումն. եւ փոխանակ նորա Հեթմոյ որդւոյ կոստանդեայ Պայլի փեսայանալ եւ թագաւորել. — Ե. Վերատեսութիւն 'ի Լեւոն։*

Ա. Իսկ Լևոնի ամփոփեալ այնուհետև զմիտս և զոգի՛ յարտաքին սահմանաց և իշխանութեանց, յանձն և յաշխարհ տէրութեան իւրոյ միայն խորհէր. այնպէս յարդարել Թողուլ յետ իւր, զի մի լիցի ինքեան զեղչ և յետամնացիցն Թերութիւն. և յայն սակս ակն կալեալ միայր անձկաւ խօսեցելոյ և յուսացելոյ փեսայի դստերն, զի հասցէ զամենայն յոյս կամ զվէճ ակնկալուաց Թագին, այնքան հգամբք ստացելոյ և այնքան արդեամբք փառաւորելոյ։ Եւ մինչ նա դեռ յայսպիսի հոգս և 'ի խորհուրդս վարանէր հանապազօր, առաւելոյր գամ քան զգամ և մարմնոյն տկարութիւն. այլ ըստ յաճախ հանդիպման այսպիսեաց՝ եռանդուն ոգւոյ վիճակելոց՝ և 'ի յետին ծերութեան և հիւանդութեան, ոչ այնքան մօտալուտ կարծէր զօրհասին կասկած, զոր առաւել քան յինքեան՝ 'ի դէմս մատուցելոցն առ ինքն նշմարէր. և Թէպէտ առ փոքր փոքր տարածանէր չչուկ գուժի՛ յարքունիս և 'ի քաղաքին և յաշխարհն, և համօրէն յեկս որ 'ի նմին և առ եբեսփոխանս պետութեանց, այլ ո՞ էր որ իշխէր համարձակել մուծանել զմահուն պատգամ 'ի սենեակ Լևոնի։ Հարկ էր գտանել լեզու հրազինեալ՝ ըստ Եսայեայն առ Եզեկիաս. և հարկն եգիտ զպատշաճն. զհայրապետ աշխարհին։ Ոչ վրիպեցաւ յայսմ ծանր և կարևոր պաշտաման՝ խորիմաց կաթողիկոսն Յովհաննէս, որ և ինքնին լցեալ էր աւուրբք. առեալ ընդ իւր զաւագագոյնս յիշխանաց եմուտ առ Թագաւորն. լռելութեամբ դիմացն քան շարժմամբ շրթանցն՝ կանխեալ մերկանալ զոր 'ի սրտին վարանումն։ Զգաց վաղվաղակի զգաստն մինչև ցմահ՝ զի այնուհետև բարձեալ է յամենեցուն յոյս կենաց իւրոց. և կամեցաւ՝ որպէս եկեացն՝ նոյնպէս իմն և մեռանել, տիրաբար և փառաւորաբար. գիտաց՝ զի կայ դեռ օր և ժամ. և մինչ չև էր իսպառ նուաղեալ 'ի զօրութենէ՝ ցանկացաւ, ըստ գեղեցիկ տեսութեան մեղրաբան վարդապետի մերոյ Եղիշեայ, զմահ իմանալով յանմահութիւն փոխել։ Եւ որպէս 'ի միջօրէի կենացն՝ յաւուրս արութեանն, 'ի լսել զոտնաձայն Թշնամւոյ՝ ինքնին կանխեալ ոստչէր ընդ առաջ ելանել հասանել 'ի վերայ ոսոխին, քան եթէ Թոյլ տալ նմա զարքունի սահմանս իւր կոխել, այսպէս և 'ի կատարածին՝ խրախուսեաց ինքնին ընդառաջել անհրաժեշտ հզօրին, ոչ տալով նմա սողոսկել յոստան իւր, այլ իւրով աննկուն ձեռամբ ցուցանել զդիրս զոր ընտրեաց 'ի յետին հանգստարան։ Ոչ ըստ կիսակտուր իմաստականութեան հակառակորդին իւրոյ աշխարհակալի, զպատանս մահուն՝ դրօշ ունայնութեան կենաց և բաղդի նշաւակելով՝ պարզել և յածեցուցանել ընդ քաղաքն, իբրու թէ զայն միայն յամենայն կալուածոցն՝ կարիցէ տանել ընդ իւր [1]. այլ սա զպսակ գագաթանն, որ և պսակ համօրէն աշխարհի, զխաչն քրիստոնէութեան՝ զոր խոստովանէր հաւատարմութեամբ, և որով գիտէր մահակից և Թագակից լինել տիեզերաց տնտեսողին, փափագեաց կարապետ ընթացուցանել յոր հարկն և կամքն ուղղէին։ Մեծագոյն արդարև յաղթանակ Թագաւորութեան ցուցեալ՝ զքրիստոնէաբարն մեռանել առն Թագաւորի։ — Ողջոյն եւ լռելեայն 'ի սրտի իւրում՝ գահուն և դարպասին, ամենազարդ դաստակերտին և ամենամուր բերդին Սիսուանայ. հրամայեաց հանել զինքն անտի, որպիսի և է դեսպակաւ կամ կառօք, և տանել ուր կամէրն։ Եւ զի եղանակ էր գարնայնի, և ամենայն սարք և ձորք ծաղկեալք և զուարճացեալք պէսպէս երանգօք և բուրմամբք, որպէս օրէն է բնութեան բարձանցն այնոցիկ Կիլիկիոյ, անմահութեան՝ քան մահու Թուէին յօրինել հանդէս հիահրաշ հարսանեաց. ընդ շաւիղ բացօթեայ՝ իբրև ընդ վեհագոյն յերկրի տաճար բնակիր՝ 'ի գերաքունն Թևակոխելով, պատուիրէր ուղևորել յուշիկ օթևանօք՝ ընդ կողմն վանաց Ակներոյ, 'ի դաստակերտ իւր, յոր քան ընդ ամենայն սրբավայրս Սիսուանայ՝ հաճեալ էր. անդ կամք եղեն նորա հանգուցանել զմեծախոհ գլուխն ծանրացեալ։ Եւ յամենայն օթևանս ուր զկայ առնուին՝ կոչեցեալ առ ինքն զպաշտօնեայսն և զիշխանս՝ տայր նոցա խրատս զգուշաւորս, և յորդոր՝ սերտիլ 'ի սէր միմեանց, որ է զօդ միաբանութեան, և յարիաբար գօտևորութիւն 'ի պահպանութիւն աշխարհին, զոր ընդարձակեալ Թողոյր յետնոցն, ամրացուցեալ զսահմանսն, և կարգեալ դէտս ըստ բաւականի. խոհականութեան և քաջութեան նոցին Թողեալ զառաւելուլն և զհերքումն հակառակորդաց։ Յանձն առնէր մանաւանդ՝ և յիշեցուցանէր զերդմունս նոցա՝ կալոյ հաւատարիմ դստեր իւրում պայազատի, որում խնամակալ և դաստիարակ կարգեալ ցուցանէր զգլխաւորս իշխանաց իւրոց՝ զՍիր Ատան, որ և 'ի ժամուն սենեսկալ էր Թագաւորութեանն, և երկրորդ նմին հոգացող տանն արքունի՝ զգունդստապլն Կոստանդին, Պայլ անուանեալ զերկոսին ևս. յանձն առնէր և հայրապետին Յովհաննու՝ հայրաբար առաջնորդել ամենեցուն

[1] Բազումք վասն Սալահէտտինի պատմեն զայս հրամայեալ առնել, և այլք վասն այլոյ ուրումն արևելեան և մոսլիման սուլտանի։

'ի կարևոր յայնմ ժամանակին. և առ հասարակ ամենայն իշխանացն և ատագորերոյ' որք մի ըստ միոջէ յաւելեալ յարքունի կարաւանն' զհետ երթային պատգարակացն, յահեղապքանչ յայնմ չուաւորութեան. կրկնէր և երեքկնէր զխոստմունս նոցա և զիւրն, անհակառակ և անյապաղ պսակել 'ի գալստեանն 'ի հեռաւոր երկրէն' զտղայ արքայորդին Ռունգարաց' ընդ տղայ արքայդստերն, և հռչակել թագաւոր և թագուհի Հայոց։ Եւ հուսկ անգամ առեալ 'ի նոցանէ խոստումն հաւատարմութեան' յօթեվանի Մրվանայ գեղջ ուր հասեալ էին, անդէն դադարեցոյց զանդրուվարսն և զչուն, զի զգաց մօտալուտ և զանդարձական զիւր գնացսն. և իբրև ամենեցուն զիւրաքանչիւր պատշաճն պատուիրեաց, յետին կտակ' յ'արձակելն զմերձակայսն' աւանդէր զայս, զի իբրև զամենայն մարդոյ հողածնի և քրիստոնէի' հոգասցեն զհոգի իւր' աղօթիւք և պաշտամամբք քրիստոսական լուսաւոր հաւատոցս, և զմարմին իւր հանգուսցեն յԱկներոյ վանսն' ուր դէմ եդեալն էր։

Հրաժարեալ այնուհետև յամենեցունց' դարձաւ անձամբ առ անձն, և 'ի հրաժեշտ հոգւոյն 'ի հնացեալ պահարանէն. մի միայն առ սյս 'ի յետնումն անդ միայնութեան' կոչեցեալ միջնորդ ընդ ինքն և ընդ Աստուած, զհայր խոստովանութեան իւրոյ, զիմաստնագոյնն և ըղհռչակեալն 'ի վարդապետս ժամանակին, զմտերիմն և հոգեկիր Սրբոյ Լամբրունեցւոյն, զԳրիգոր Սկեւռացի. ընդ որոյ աստուածափոխան աջովն' գիջոյց զբարձր և զխոնարհեալ գլուխ իւր. եւ խոստովանութեամբ զհամար կենացն մինչ չև մտեալ յատեան ամենադատաւորին. և «դաւանեալ զխոստովանութիւն ուղղափառ » հաւատոյն, (որպէս յիշեցուցանէ պատմիչն), և ընկալեալ զհաղորդութիւն 'ի ձեռաց սուրբ վարդապետին, » գոհանալով զՏէառնէ », աւանդեաց առ նոյն զոգին, զոր այնքան վսեմափայլ եցոյց 'ի մահացու կայարանին։ Ամսամուտ կամ երկրորդ օր էր մայիսի յաւերժայիշատակն այն օր, 1219 թուականին Քրիստոսի, և Հայոց ՈԿԸ, 'ի լրման երեսներորդի երկրորդի ամի իշխանութեան իւրոյ և 'ի քսան և միոյ թագաւորութեանն։

Բ. Եթէ էր երբէք ազնուախոհ սրտից Հայոց' մորմոքել դառնապէս ընդ զրկումն յամենաշնորհ ազգապետէ, կարծեմ ոչ առաւել քան զայս էր գտեալ. ոչ մեծագոյն քան զայս կորուստ, եթէ արժան իցէ կորուստ նշմարել 'ի նմա' որ մեծ գտեալ 'ի կեանսն, անմահ եթող վաստակ և համբաւ. որ' եթէ և մեզ յետնոցս իբր եօթամբք դարուք' այսքան սխրալի, որքան արդեօք ականատեսիցն, հիացողացն, վայելողացն 'ի պերճութեանն, 'ի քաջութեանն, յիմաստութեանն, 'ի տուրս և 'ի շնորհս նորին։ Առ հասարակ միաբան գովութիւն և պքանչանք ամենայն պատմչաց, և ոչ ումեք ստգտանք, քաջ իսկ յայտ առնեն' զանհնարին սուգ և տրտմութիւն հպատակացն, զմեծաց և զփոքունց 'ի մահուան նորա. զոր հակիրճ բանիւ աւանդէ ոմն 'ի պատմչաց, եթէ, « յոյժ սգացին զնա ամենայն աշխարհն իւր », և զսարսուռ իմն զանխուլ ընթացեալ ընդ ոսկերս օտարաց անգամ, մանաւանդ մերձաւորացն Խաչակրաց, որոց այնքան օգտեալ և առաւել ևս ակնկալութիւն էր 'ի նմանէ [1]։

Զիք երկրայել' զի երախտեալքն և յարգողք և պանծացողք յայնպիսի տէր և թագաւոր, զարժանաւորն նմա կատարեցին ազախառն մեծահանդէս յուղարկաւորութիւն հանգստեան, որպէս երբեմն հարք նոցա' մեծին Տրդատայ, կամ հնագոյնքն ևս' Արտաշիսի Բ՛։ Եթէ արդեօք և որ յետ Աստուծոյ' զիտակն էր գաղտնեաց սրտի նորին և աւագագոյն աչօք ճանաչող արժանեացն, դըրուատիչ Սիրելւոյն Ներսիսի, նոյն ինքն Սկեւռացի հռետորն Գրիգոր, արտասանեաց և 'ի վերայ Լևոնի' բան գերեզմանական, համառօտելով զվարս նորին, զաջողութիւնն և զքաջութիւնս, զազգի միոյ անյոյս թագաւորութեան յարուցիչ և զարդարիչ, զպատուեալն 'ի կայսերականաց և 'ի Հռովմայ գահուց, զմտերիմն և զբանակից հեռաւոր և մերձաւոր աշխարհատեարց, զձգողն 'ի ծագաց արևմտից և արևելից յարքունիս և 'ի չահաստանս Կիլիկիոյ' զկարաւանս և զտորմիղս նաւուց նոցին, և 'ի չահէ և 'ի բաժէ աղխամաղխի հարստացուցիչ արքունի գանձու, եկեղեցեաց և վանորէից. յիշեցմ̂ց զզինազարդութիւն կայտառ մանկտւոյ ձիաւորաց, և ըստ դաւթեան առասացութեան' զպաճուճազեղ զգեստաւորութիւն զիսակազեղ դստերաց Սիոււնայ' 'ի հանդերձս կարմիրս և յոսկեճամուկս, և որ այլն ևս. — Հաւատամ, թէպէտ ոչ իցէ հասեալ առ իս 'ի պատմութենէ, զի թէպէտ Սկեւռացին, թէպէտ ծերունի կաթողիկոսն Յովհան, և թէպէտ այլ ոք' ոչ վերջացան 'ի պատշաճից աստի։ Այլ չատ է 'ի վկայութիւն խորագոյն կրից և սիրոյ համօրէն ժողովոյն' և դոյզն ինչ հասեալ մեզ գրով աւանդեալն. այն, զի մինչդեռ չև էր թագաւորին արձակեալ զյետին շունչ կենացն, այլ արդէն մտեալ յառագաստ օրհասին, արտաքոյ կացեալ ժողովուրդն, իշխանք և քահանայք' վիճէին վասն մարմնոյն, այսինքն է տեղւոյ հանգստարանին, իւրաքանչիւր յիւր կողմն ձգելով' հաւանական փաստիւք. որոց յառաջամատոյց ինքն կաթողիկոսն' յիւր վանսն, որ 'ի ժամուն հայրապետանոց էր, 'ի հռչակաւոր մայրավանսն 'ի Դրազարկ' ասէր պատշաճ հանգուցանել զնա. այնդէին Պարոնայքն' հաւատարիմ պաշտօնեայք հրամանաց թագաւորին, եթէ ըստ պատուիրանի նորին պարտ և արժան է ամենայնիւ' յընտրեալն իւր 'ի դաստակերտ' յԱկներոյ վանս տանել, ուր և հիւանդագին անձամբն դէմ եդեալս է, և ահա արգելու միայն օրհասն կանխաժաման. բողոք բառնայր 'ի բերանոյ բնակչացն' քաղաքամայրն Սիս, եթէ ուր աթոռս է արքայի և արքունաչէն նորա եկեղեցի' աստանօր վայել է նմա և դնիլ 'ի տապանի։ Ցաղթողագոյն գտան աշխարհական դասքն,

1 Յոլովք 'ի ժամանակագրաց արևմտեայց և պատմչաց խաչակրաց նշանակեն զմահ Լևոնի. որպէս Բենլովագեանն. Ejusdem (Damiati) obsidionis tempore Rex Armeniæ Leuo defunctus est in terra sua. — Տ' Էսրէ (*Pierre d'Esrei*): Nouvelles vindrent au roy Jehan de Hierusalem, que le roy d'Armenye, lequel retourna en Acre, estoit allé de vie a trespas. — Տարեգիրք Սրբոյ Երկրին (*Annales de Terre Sancte*): En cel an morut li rois Lyvon del Meane? Ուղղագոյն ևս այլ գրէ: En cheli an morut le roy Livon d'Ermenie.

ժողովուրդն և իշխանք. գոյժ մահուն՝ խաղաղեաց զխռովեալսն. և միաբանեալ՝ հաւանեցան հանել զերկուսին ևս կողմանսն. կատարել զկտակ թագաւորին և զկամս ժողովրդեան. բառնալ զմեծահարկի սիրտն փորստեօքն հանդերձ, տանել հանգուցանել 'ի հանգստարանն իւր վանս Ակներոյ, իսկ զմարմինն՝ 'ի թագաւորականն իւր յուղարկել քաղաք, և յիւր սեփական ձեռակերտ եկեղեցւոյն 'ի կափարումն. և արարին այնպէս։

Թագուցին կափարմունք զհողեղէն նշխարս Լեւոնի. թուէր հոգւոյն հոլմեալ թեւածել ընդ երկար՝ զտամբն և զաշխարհաւ. ոչ ջնջեցաւ պատկեր նորա յաչաց տեսողացն՝ մինչև ցօր վախճանի իւրեանց, և ոչ յիշատակն՝ իբրև կենդանւոյ պաշտեցեալ ցկատարած հարստութեան Ռուբինեանց. օրհնութեամբ կրկնելով անուանն՝ յորդւոց յորդիս, նաև յօտար և 'ի մայրենի տոհմի ծնունդս իսկ՝ զԼեւոն անուն յաճախ դնելով մանկանց՝ որ 'ի փառանկ հօրէ։ Ոչ որպէս զրազումս 'ի մեծամեծ իսկ մարդկանէ և 'ի թագաւորաց՝ փայլեանց իմն եղև Լեւոն՝ համօրէն մեծութեամբն. այլ մեծ 'ի կեանսն՝ թերևս մեծագոյն յետ մահուն ցուցաւ, թողլով 'ի հաստատութեան զթագաւորութիւնն՝ յորոյ կանգնումն նկրտեալ էր մահուչափ ճգամբ և հոգովք. պատկեցան ջանք և իղձ նորին 'ի բաղդէ, որ է ասել՝ գործակցութեամբ հաւատարմացն և կամաց վերին այցելութեանն։ Եւ զի զայս գործ, այսինքն է՝ զյաջորդութիւն աթոռոյն՝ իբրև ճաճանչ ինչ առաւերախառն յետ խոնարհելոյ արևուն իւրոյ՝ թողեալ էր Լեւոնի՝ 'ի պատմութեանս մերում, արժան է 'ի բովանդակութիւն պատկերի կենացն՝ պարզել և զթերին. որով և յատակագոյն համօրէնն երևեսցի նկարագիր։

Գ. Տեսաք ամաւ յառաջ քան զմահն՝ հռչակեալ 'ի Լեւոնէ յետին կտակաւ և քահանայապետական կնդակաւ հաստատեալ ժառանգ թագաւորութեան իւրոյ զերախայ դուստր իւր Զապել, և զխօսեցեալ փեսայն հեռաւոր զԱնդրէ՝ որդի թագաւորին Ունգարաց. յորմէ՝ անագան ուրեմն յետ վախճանի Լեւոնի դարձան հրեշտակքն առաքեալք, բերելով զրոյց՝ զի փոխեալ է արքայն Ունգարաց 'ի մտայն խորհրդոյ. ոչ զկամեմ էր աղագաւ, և ոչ ևս կամի առաքել զորդւոյ որդին 'ի Հայս։ Համբաւ՝ որպէս և էր բնական՝ 'ի վարանս արկ զխնամակալսն, զՊայլս[1] և զպարոնայս, այլ և յերկպառակութիւն. յոր յաւելան և ինքնամատոյց յառաջանձգութիւնք փափագողաց թագին և ժառանգութեանն, և սպանումն Սիր Ատանայ՝ 'ի Հայիչեաց (Աւազակաց), 'ի նմին իսկ 'ի Սիս մայրաքաղաքի, 'ի փողոցին՝ որ տանէր յեկեղեցին Բարսումայ։ Իշխեցին ոմանք կասկածել կամակցութեամբ Կոստանդեայ գունդստաբլի Պայլ՝ երկրորդ խնամակալի արքայորդւոյն՝ եղեալ զոհին, որում չտան ինչ փաստս. թերևս կարծելով առ քինու զերութեանն 'ի Փէյքաւղայ, զի 'ի մարտին որ 'ի Շողականն՝ ոչ օգնեաց նմա Ատան, մանաւանդ եթէ արգել զկատարեալ յաղթանակն, զնա 'ի միջի թողլով թշնամեաց՝ և ինքն 'ի բաց կամ 'ի փախուստ դառնալով. բայց զայս չէ ուրուք ասացեալ, և ոչ մեք առ հաւանութեան։ — Կոստանդին որդի զոլով քեռւոյ Լեւոնի, մարթի կոչիլ և դայեկորդի նորին, զի զբեաթէ 'ի միում տան սնեան, մինչ Ռիթա մայր Լեւոնի և Ռուբինի՝ սնուցանէր զսոսա 'ի Պապառօն, 'ի տան Բակուրանայ եղբօր իւրոյ և եղբօր Վասակայ՝ հօրն Կոստանդնի. բայց սա շատ կրսեր էր տիօվք քան զԼեւոն. այլ զի և անդստին յ'ամէ 1205 յիշի յարքունիս Լեւոնի, և յետ սակաւ ամաց՝ նաև պաշտամամբ սպարապետութեան, (թէպէտ և անդրանիկ որդին՝ Սմբատ Գունդստաբլ՝ առ ծնեալ յամի 1208 կամ 1206), իսկ ինքն Կոստանդին եկեաց յետ Լեւոնի ամս քառասունևհինգ, և արքամանեան ծերունի կոչեցաւ. յայսմ ամենայնէ զուշակի անցեալ զերեսնամենիւք 'ի մահուն Լեւոնի. և զէթ իբրև հնգետասան ամ սպասաւորեալ նմա, և ցուցեալ զանձն որ ինչ լաւ ևս յայտնեցաւ յետոյ, քաջարի, խոհրագէտ և հաւատարիմ թագուորի. վասն որոյ և կարգեցաւ 'ի նմանէ 'ի գլուխ զօրուն և վստահացաւ 'ի պայլութիւն պայազատին, որում և մնաց միագլուխ խնամակալ, և հազարապետ տանն արքունի՝ յետ սպանման գործակցին։

. Առաջին յակնկալուաց ժառանգութեան գահուն Լեւոնի՝ եղև ծերունի այլ աշխոյժ փեսայ նորին, թագաւորն Երուսաղեմի Յովհ. Պրիեն, որպէս վերագոյնդ ծանուցաւ, ըստ կարծեցեալ իրաւանց որդւոյ իւրոյ տղայոյ, որ և թոռն Լեւոնի 'ի Ռիթայ-Ստեփանուհւոյ դստերէ իւրմէ՝ ծնելոյ յառաջնոյ կնոջէն, որով և անդրանիկ քան զԶապել։ Այնքան իրաւացի համարէր Պրիեն զպահանջն կամ կամէր իրաւացուցանել, զի գրեաց՝ որպէս կամեցաւն՝ առ Քահանայապետն Ոնորիոս Գ., և ընկալաւ 'ի նմանէ գիր հաւանութեան (գրեալ 'ի սկիզբն փետր. 1220 ամի). այլ եթէ որպէս վրիպեցաւ 'ի յուսոյն՝ արագարագ մահուամբ կնոջն և որդւոյն, ծանուցաք և զայն յառաջագոյն։ Ասի յոմանց յարևմտեայ պատմչաց՝ եկեալ իսկ Յովհաննու 'ի Հայս՝ յառաջ քան զմահ կնոջն և որդւոյն, և մերժեալ 'ի Հայոց, վասն որոյ և սրտմտութեամբ դարձեալ և կամեցեալ զինու զօրութեամբ մաքառել. 'ի նմին ժամանակի թուի և Հայոց գրեալ առ Քահանայապետն, ծանուցանելով զվերջին կամս Լեւոնի. քանզի միւսանգամ գրէր Ոնորիոս առ Յովհ. Պրիեն (յամսեան օգոստոսի), և նզովիւք պատուիրէր մի լինել ձեռնամուխ յայդ խնդիր Հայոց. և այսպէս իսպառ յուսակտուր դադարեաց նա։

Երկրորդ ակնկալուն՝ ծանօթ երիտասարդն է, Ռուբէն-Ռեմունդ, երբեմն արդարև ժառանգ հռչակեալ և հաստատեալ իսկ քահանայապետական հաճութեամբ, այլ վասն կանխածանօթ ապերախտութեանն առ Լեւոն՝ մերժեալ 'ի նմանէ, որպէս և էր մերժեալ յիւրոյ իսկ բնիկ աթոռոյն յԱնտիոքէ, մախանօք հակառակորդին իւրոյ Պեմունդի. և մինչ ջանայրն վերադառնալ 'ի նոյն՝ օժանդակութեամբ գահուն Հռովմայ, լուեալ զմահ Լեւոնի, միւս ևս անխոհական խորհրդով, մինչ յայտնապէս գիտէր զյետին կտակ նորին, համարձակեցաւ բռնաբա-

[1] Օրէնք Ասիզացն Երուսաղեմի պատուիրեն Պայլս երկուս կարգել անտիական որբոց պայազատաց. զմին՝ 'ի պահպանութիւն անձանց նոցին, և զմիւսն 'ի գզուշութիւն ընչից նոցին. ըստ այսմ օրինակի այսպէս արարեալ էր և Լեւոնի։

րել զբաղդն կորուսեալ։ Եւ ոչ նա միայն փառասէր խորհրդովն բորբոքէր, այլ հասարակաց իմն մոլութիւն էր իշխանաց ժամանակին՝ ձկտիլ 'ի բարձունս, մանաւանդ եթէ դոյզն ինչ փաստ ումեք գոյր ժառանգութեան կամ խնամութեան. և առ այս զմիմեամբ ելանէին՝ կին ածել զդստերս և զայրիացեալ կանայս իշխանազանց և տեարց մեծակաց, բազում անգամ ոչ խտրելով ոչ զհասակ և ոչ զայլ պատշաճս։ Որպէս այժմիկ և Ջօֆրէ տէրն Սարուանդիքարի, թերևս գաղտնի յուսով գահերիցութեան՝ իշխէր խնդրել յիւր կնութիւն զԼևոնի իսկ թագուհին զՍիպիլ, որ էր տակաւին մանկամարդ իբր քսան և մի ամաց. այլ հեռատեսն Կոստանդին մերժեաց խապառ զայնպիսի խնդիր՝ որ զԱդոնիային բերէր առ Սոմնացին Աբիսակ։ — Ցանդգնագոյն ևս գտաւ մարաջախտն Հայոց Վահրամ՝ Կոփրետոյ որդին, տէրն Կոռիկոսի. խնդրեաց սա 'ի Ռուբինէ զմայր նորին Ալիծ, որ էր յայնժամ իբր քառասնամեայ, խոստացեալ օգնական լինել նմա 'ի թևարկութիւն թագաւորութեան Հայոց. և սրար այնպէս։ Բայց Ռուբինի կամելով հաստ առնել զթիկունն՝ թախանձէր զլիկաթ Քահանայապետին, մինչ տակաւին 'ի պաշարման Տամիադայ նստէին, ձեռն տալ ինքեան իբրև վաղագոյն ժառանգ կարգեցելոյ 'ի Լևոնէ. և Պեղագիոսի անտեղեակ գոլով եղելոցն 'ի սկզբանէ՝ ոչ գըտանէր անհաւան, այլ և գրէր առ Հայս ընդունել զնա։ Ոչ և այսու շատացեալ Ռուբինի՝ եգիտ սինկօրս ոմանս, և գունդ կազմեալ եմուտ 'ի Կիլիկիա, և հրաւիրեալ ըզհամախոհ իւր Վահրամ, որսացան 'ի միաբանութիւն իւրեանց և զՅոյնս՝ որք 'ի Տարսոն մեծ մասն բնակչացն էին, և կալան զքաղաքն զայն մեծ և զբերդն որ 'ի նմին. և գումարեալ մարտիկս հինգ հազար, կամէին յեղակարծումն ժամու անկանել 'ի վերայ արքունական քաղաքին և տիրանալ գահուն։ Գուժկան եհաս առ Պայլն Կոստանդին՝ մինչ կայրն անդ անկասկած. և ոչ գիտելով զթիւ համարոյ ապստամբացն՝ ել 'ի Սսոյ երեքհարիւր արամբք պատահել նոցա. դիմեալ 'ի Մամեստիա՝ ուր համարէր գտանել զնոսա՝ և ոչ հանդիպեալ, յառաջեաց երթալ յԱտանա. և ահա ընդ առաջ ել նմա ստուար գունդ ապստամբացն. զորոց տեսեալ զբազմութիւն՝ սկսան զանգիտել որք ընդ իւրն էին. այլ նա՝ որ զօգի կրէր և զսէր Լևոնի, քաջալերեալ զնոսա և խմբեալ 'ի դիպան վայրի՝ առ փոքու կամրջաւն, յարձակեցաւ պարտեաց ցրուեաց զբանակ հակառակացն, և կալեալ զյոլովս 'ի նոցանէ՝ պատուէր ետ կողոպտել 'ի զինէ և 'ի զգեստու, բայց մի սպանանել. և ինքն իւրայովքն շհետ պնդեցաւ փախըստէիցն պարոնայց, որք ամապարեալ անկան 'ի Տարսոն, փակեցին զդրունսն, և սկսան 'ի պարսպացն նետաձիգ լինել 'ի գունդն կոստանդեան։ Ցայսմ ամենայնի խորհրդակից և գործակից էր Պայլին՝ կաթողիկոսն Յովհաննէս։ Ընդերկարէր և դժուարանայր արդեօք պաշարումն և առումն քաղաքին Տարսոնի, եթէ չէր վաշխի ուրումն բանատու եղեալ Գունդստապլին, յորմէ առեալ տուրս զոր խնդրեաց՝ եբաց 'ի գիշերի զդրունս քաղաքին. 'ի ներքս խուժեցին զօրք Կոստանդնի. և որպէս գերելոցն 'ի կռուին՝ և զբնակչացն յաւարի առին զինչս, խնայելով 'ի կեանս նոցա։ Բայց Վահրամ և Ռուբէն հանդերձ այլովք իշխանօքն ելին ամրացան «'ի կլայն, որ էր գեղեցիկ և անըմբռնելի ամրութեամբ», ըստ պատմչին։ Առ որ հարկ եղև դարձեալ երկայնմտութիւն և խորագիտութիւն Պայլին. զի մի առ մի քակեաց զմիաբանեալսն և ձգեաց արտաքս, և եդ յարգելան բանտի, մինչև տիրացաւ բերդին. ապա զոմանս արձակեաց, զայլս առաւել մեղապարտս՝ արդարապէս պատուհասեաց, ընդ որս սպանաւ և Վահրամ իբրև ապստամբ, և ոմանք 'ի բանտին մեռան։ — Այսպէս եղև և տարաբաղդ երիտասարդին Ռուբինի, որ մինչդեռ երկոցուն իշխանութեանց մեծաց թեկն ածէր, տուայտեալ 'ի տառապանս զնդանին՝ յամենայնէ զրկեցաւ, և յարևէն իսկ (1222), այնքան պայծառ ծագելոյ երբեմն՝ լուսով Լևոնի, և պայծառագոյն ևս փայլել յուսացուցանելով, կարճ կենօք (հազիւ քսանևհինգամեայ), ընդ երկար տատանեալ յերկակի նժարս բաղդի, և ծաղկապէս խամրեալ ամենայն գեղով հասակին և ոսկէթել վարսիւքն [1]։ Բայց որպէս բազում անգամ 'ի կեանսն նոյն և 'ի մահուն՝ կարեկցութեան գտաւ արժանի. 'ի տղայութենէ անտի իւրոյ թղթովք Լևոնի և ապա իւրովքն և այլոց՝ ծանօթ գոլով 'ի բազում դէպս յատենի Քահանայապետին Հռովմայ, պատուէր առաքեցաւ աստի առ լիկաթն (Պեղագիոս) յԱսորիս, խնամ տանել կնոջ նորին և որդեկացն. որք երկու դստերք միայն յիշին. մին (Էշիվա) վաղամեռիկ լեալ, միւսն՝ Մարիամ, յամին 1241, եղև կին Փիլիպպոսի Մոնֆորդ կոչեցելոյ տեառն Տիւրոսի, և անուանեցաւ Տիկին Թորոնի, (բերդ մերձ 'ի Տիւրոս, զարդիս կոչեցեալ Թէպնին), ժառանգելով զանդին կամ զանունն՝ 'ի հանեայ իւրմէ Ալիծայ դստերէ Ռուբինի Բ՝ մօր Ռուբինի-Ռեմունդի, որ սրար իւր անուն՝ անվեհեր վիճմամբ 'ի վերայ ժառանգութեանն [2]։

1 Տարէգիր Ս. Երկրին նշանակէ յամին 1221 զըմբռնումն Ռուբինի, և յետոյ զմահն. Le Bail d' Ermenie prist Ruppin à Torso, et le mist en prison, dont il morut.

2 Քանզի կին Ստեփանեանն Ռուբինի՝ Իզապէլ, ժառանգեալ էր զբերդն Թորոն յ՚անզաւակ փռանկ եղբօրէ իւրմէ Հըմֆըրեայ (Գ կամ Դ). յետ որոյ Սալահէտտին տիրացաւ տեղւոյն. և յետ ամաց աւելի քան զքառասուն (1229), յորժամ քրիստոնեայք գաղամիք թափեցին զայն յԵգիպտացւոց, և Տեւտոնեանք գրաւել կամէին՝ իբրև տուրս ինչ ինքեանց յ՚Բ Հըմֆըրեայ, որդեկորոյսն Ալիծ՝ որ ոչ միայն զարիւն այլ և զոգի Ռուբինեանց կրէր, ամբարձաւ ընդդէմ նոցա և պահանջէր իբրև ժառանգութիւն մայրենի. որում հաւանեցաւ Վերին ատեանն Երուսաղէմի. այլ Պայլ կայսերն Փրետրիկայ Բ, իբրև Թագաւորի Երուսաղէմի, զասպետաց կողմն ունէր. յայնժամ տիկինն Ալիծ՝ որպէս յանիրաւի զրկեալ 'ի վէհագունէ իւրմէ (կայսերէ), իրաւամբք՝ ըստ օրինի Ասիզացն, ապստամբեցոյց զլիճ ճորոս վիճակին Թորոնի՝ չհատուցանել կայսեր զպարտս իւրեանց։ Արդարացոյց Փրետրիկ զտիկինն, և դարձոյց 'ի նա զԹորոն, (որ արժէր վաթսուն հազար բիզանդ ամենակինեան), փոխանակ այնր տուեալ Տեւտոնեանց՝ հասս ըստ չափու հասից տեղւոյն։ Ալիծ՝ յետին հնացեալ շառաւիղ ուղղագիծ 'ի նախահաւէ տոհմին Ռուբինեանց՝ յիշի փոքր մի ևս զկնի այսր ժամանակի, յորում անցեալ էր զյիսնամենիւք, և յորժամ տիկնաբար վաւերական գրովք պարգևէր ասպետաց այլ և այլ կալուածս, զորս թոռն նորա և փեսայն՝ կրկին հաստատեցին։ Յետին ծանօթ հրովարտակ Ալիծայ է տուեալն յամսեան Նոյեմբերի 1234 ամի, առ Եղբարս Ս. Ղազարու Երուսաղէմի, հաստատելով նոցա զտուրս 30 ոսկի բիզանդաց, ըզտուեալն յառաջնոյն Հըմֆըրեայ յամի 1151։ Յետ մահուան Ալիծի՝ թոռն իւր Մարիամ դուստր Ռուբինի-Ռեմունդի, զորմէ բան

Հարկ համարեալ լրման պատմութեանս՝ զայսքան մեծ տեղի 'ի վարս Լեւոնի գրաւողին, զեղբօր թոռինն, նշանակել զելս կատարածի և զյետամնացս նորին, դարձ արասցուք 'ի ժառանգ թագաւորին և յոստանն խաղաղեալ արդ, 'ի բառնալ թելնածուաց թագին և 'ի նուաճիլ ապստամբացն ընդ հզօր ձեռամբ Պայլին Կոստանդնի. որում տեսաք գործակից՝ ըստ իւրում կարի՝ զծերացեալ կաթողիկոսն, հաղորդ ոչ սակաւ մեծամեծ դիպաց և գործոց Լեւոնի՝ և յառաջնմէ իսկ քան զթագաւորել նորա. յետ տարւոյ և ամսոց ինչ մահուան նորին՝ եհաս վախճան և ինքեան, արքայակերպ հայրապետին, որ եկաց յաթոռն ընդ առաջին և ընդ երկրորդ նուագն և ընդ անկն միանգամայն՝ ութևտասն ամ. և թաղեցաւ յաթոռ իւր յետին՝ 'ի Դրազարկ: — Վէճ մեծ եղև վասն յաջորդի նորին, զի չէր 'ի միջի Լեւոն, որոյ հաւանութեամբ կարգեալ էին յետին չորք կաթողիկոսունքն. երկուք էին այժմ ընծայեալքն 'ի բազմաց կամ 'ի գլխաւորաց. Կոստանդին Լամբրունեցի՝ որդին Հեթմոյ-Հեղեայ՝ որ յամենայնի ձեռներէցն էր՝ յառաջ մատուցանէր զՏ. Գրիգոր վարդապետն Սկեւռացի, այր, որպէս բազում անգամ տեսաւ 'ի պատմութեանս, արժանաւոր, առաքինի, զգօն և գիտնական, և հասունացեալ հասակաւ. իսկ Կոստանդին Պայլ՝ զանուանակից իւր զտէր Կոստանդին Բարձրբերդցի, որ ցայս վայր չէր երևեալ 'ի պատմութեան, և եպիսկոպոս այնր բերդի և նահանգի թուի զոլ, որում աշխարհօրէն տիրէր ինքն Պայլն. սա ընտրեալ յոլովից միձակաւ գումարելոցն եպիսկոպոսաց և վարդապետաց, օծաւ կաթողիկոս Հայոց, և երկայն ամօք (քառասուն և վեց ամ) եկաց յաթոռն, գրեաթէ զոյգ զամենայն ժամանակ թագաւորութեանն Հեթմոյ:



232. Կնիք Կոստանդնի կաթողիկոսի [1].

Դ. Իբրև կարգեցաւ գլուխ եկեղեցւոյն Հայոց, որ և առանձինն իմն հովուապետ և հայր էր տանն Սիսուանայ՝ յայնմ ժամանակի, և խաղաղեցաւ երկիրն, ժամ էր այնուհետև կատարել զկտակ Լեւոնի և յապահովել խպառ զժառանգ նորին Զապել, որ էր յայնժամ ամաց իբրև եօթանց. և զի 'ի լսելն զմահ Լեւոնի՝ տեսաք ջրեալ Անդրէի արքայի Ունգարաց՝ զխոստումն առաքելոյ զորդին 'ի փեսայութիւն և 'ի թագաւորութիւն Հայոց, հարկ կարևոր էր գտանել օրիորդին այլ փեսայ, ոչ սպասելով լրանալոյ տիոցն, զի մի՛ դարձեալ բռնաբարիցի բարձն թագաւորական: Ծանր արդարև և յոյժ մեծ էր խնդիրն, և մարթ էր բազում հակառակութեանց լինել առիթ. այլ կամ յահէ Կոստանդեայ, կամ զի և ամենեցուն հաճոյ թուեցաւ խորհուրդն, միաբան հաւանութեամբ ընտրեցին խօսել Զապելի փեսայ զայն՝ որ ըստ նախ եղելոց անցիցն յաւուրս Լեւոնի, անհաւատալի իմն թուէր. այսինքն է՝ զորդի կոմսին Տրիպօլեայ, բռնաբար ունողի արդ և զիշխանութիւնն Անտիոքայ, զհակառակորդի զրկելոյն Ռուբինի և զԼեւոնի պաշտպանի նորա. սակայն և յայսմ ոչ էր խորհուրդ նոցա հեռի 'ի մտաց թագաւորին, եթէ ոչ և 'ի սրտէն. զի որպէս ինքն առ աններկեան լինելոյ յայնմ մարզէ՝ էառ զառաջին կինն յԱնտիոքայ, նմանապէս և իշխանքն խորհեցան առ 'ի փարատել զամենայն խէթ ընդդիմութեան կամ վրիժու՝ ընդ կարևոր դրացիսն, առնել խնամութիւն, և դարձեալ յԱնտիոքացի մի զուգել զբաղդ երկրի իւրեանց, և սերտ միաբանութեամբ կալ հակառակ այլազգեաց և այլադենից, ընդ որս տակաւին սաստկանայր պատերազմն 'ի Պաղեստին:

Այս ածին զՖիլիպ զերկրորդ որդի Պեմունդի Դ., զոր ունէր յառաջին կնոջէն (Բլէզանս, դուստր Հիւկի տեառն Ժիպլէի, որ է Գապալ). և էր սա չափահաս պատանի իբրև ութևտասն ամաց [2], և պսակեցաւ ընդ միամիտ օրիորդին, և թագ կապեցաւ երկոցուն (1221). բայց պայման անհրաժարելի եդին նմա Հայք, սովորութեամբ արքունեացն Լեւոնի, և ըստ ծիսի Հայոց վարիլ յամենայնի, և մի՛ 'ի լատինականսն յեղուլ սովորոյթս կամ ծէս. և որպէս ռամկօրէն ասէ Սմբատ, « Բերին 'ի պոման՝ որ հայեաւ » կենայր, և զեկեղեցին և զանդամն հայեւան տանէր, և » զամէն մարդ յիւր իրաւունք պահէր »: Այլ նա և ոչ երկեամ մի եկաց հաւատարիմ 'ի խոստմանն. կամ թէ զառաջինն ակն ածէր և անսայր Պայլին, իսկ յորժամ էառ զհասակ ինքնավարութեան, քանամեայ եղեալ, սկսաւ առ փոքր փոքր խոտորիլ 'ի սովորութեանց և 'ի ծիսից թագաւորութեանն և հետևիլ հայրենականացն. և ոչ այսչափ միայն, այլ և տիրաբար իմն ձեռներէց լինելով փոփոխել զպաշտօնեայս և զիշխանս, և ըստ կամի ամբառնալ զանուագս և զանընկս. և խրատեալ բազում անգամ և անլսող լեալ, (քանզի ունէր թելադիրս և սադրողս 'ի Լատինաց անտի որ յերկրին Հայոց, և որպէս թուի նաև յաւուրէ եկեղեցւոյ նոցին). իբրև յաւել 'ի վերայ այսոցիկ՝ տանել յԱնտիոք և յարքունի գանձուց Հայոց, ոչ միայն մերժեցաւ 'ի պատուոյն՝ զոր ոչ գիտաց յարգել, այլ և 'ի կենակցութենէ դշխոյին զատեր Լեւոնի, յորոյ և 'ի գրկաց իսկ կորզեցաւ գիշերայն, և արկաւ 'ի բանտ 'ի Թիլն Համտընոյ, մինչև յետս դարձուցէ յԱնտիոքէ զարքունական սպասն, զոր հայր նորա ասպ…

պատմութեանս էր, ժառանգեաց զԹորոն, և յանուն նորին այր իւր Փիլիպպոս և ապա որդիքն՝ կոչեցան տեարք Թորոնի: Նոյայտ է և ժամանակ մահուան Փիլիպպինայ քեռն Ալիծի, դշխոյի Լուսկրիս կայսեր: Իսկ Մարեմայ՝ երկու ուստերք և երկու դստերք եղեն 'ի Փիլիպպեայ, անդրանիկն Յովհան տէր Թորոնի, կրսերն Հըմֆըէ. երկոքին եւս 'ի միում ամի վախճանեալք, 1283, յետ վաճառելոյ զկալուածս իւրեանց:

1 Սմին Ա. Կոստանդնի թուի կնիքս, որոյ կաղապար գտաւ 'ի պեղման յատակի մայր եկեղեցւոյ Séez քաղաքի Փռանկաց:

2 Զի քսանամեայ ասէ զնա Սմբատ՝ 'ի մերժմանն յաթոռոյն:

ռում ժխտեաց, ասեն, անողորմ գտեալ առ որդին տառապեալ. որ ոչ այնքան զնդանին՝ որքան 'ի սրտին անձկութենէ հարեալ՝ զրաւեցաւ և ինքն զայսօրինակ տըրտմութեամբ, վատաբախտիկ և վաղամեռիկ [1]։ Գլուխ արժանակիր խնդրէր մեծ և ծանր թագն Լևոնի։

Երկրորդ անգամ կարգեցաւ Կոստանդին 'ի Պայլ (1223), ոչ արքայ օրիորդին միայնոյ, այլ և համօրէն թագաւորութեանն, և յանձանձեաց երիս ևս ամս. 'ի բաց վարեաց զկուսակիցս և զսադրիչս Փիլիպպոսի, ընդ որս և զեպիսկոպոսունս Լատինաց. որպէս է գուշակել 'ի թղթոց Քահանայապետին Ոնորիոսի առ Կոստանդին կաթողիկոս, խնդրելով զի դարձուսցէ զհեռացեալ արքեպիսկոպոսունս Տարսոնի և Մամեստիոյ. որ և ապա 'ի լինել հաւանութեանն՝ գրէր առ պատրիարքն Երուսաղեմի (17 դեկտ. 1223), վերահաստատել զնոսին յաթոռս իւրեանց։ Նուաճեալ ընդ իւրև զբազումս յօժարութեամբ, և զայլս՝ ահարկութեամբ՝ զՊարոնսայսն, (զորս ոմանք թուով վաթսուն և երկու ասեն, այլք եօթանասուն), Պայլն Կոստանդին, խորհրդակցութեամբ կաթողիկոսին՝ առաջի արար զընտրութիւն նորոյ թագաւորի և փեսայի Զապելի, որ արդ իբր իննամեայ էր։ Այլ յայամ նուազի թուէր իմն, ըստ առակաւոր առիծուն՝ խնդրել բաժին. միաբանեցան Պարոնայքն և եպիսկոպոսունք՝ զկրսերագոյնն կամ զմերձագոյնն կրսերոյն յորդւոց նորին իսկ Կոստանդնի, զնմանեակն Դաւթի կայտառ և գեղաղէշ և զանձնեայ պատանեակ մետասան ամաց՝ զՀեթում, կարգել իւրեանց թագաւոր. և հրաւէր կարդացեալ հեռաւորաց և մերձաւորաց՝ աշխարհաժողով և մեծաշուք հանդիսիւ 'ի մայրաքաղաքն Տարսոնի, յաւուր տօնի Գալստեան Հոգւոյն սրբոյ ('ի 14 յունիսի 1226 ամի), օծին ձեռամբ կաթողիկոսին Կոստանդեայ 'ի թագաւոր Հայոց, և պսակեցին ընդ Զապելի։ — Սա թէպէտ 'ի սկզբանն 'ի սրտի ունելով զանձուկ առաջնոյ փեսային, կամ մանաւանդ սադրեալ 'ի մօրէ իւրմէ, պնտելով հայէր 'ի մանուկն Հեթում, այլ ապա հանգեաւ 'ի նա կաթոգի, և ընծայեաց ծիրանածին ուստերս երիս և դստերս հինգ։

Ցայնմհետէ Կոստանդին իբրև Թագաւորահայր, որպէս և էրն իսկ և յատկաբար կոչեցաւ, այլ և Աւագ Պարոն, խնամէր յանձանձէր զբովանդակ թագաւորութիւնն, խորհրդով և զինու զօրութեամբ, ցորչափ բաւէին բազուկքն կրել զպատերազմական գործիսն, ցամս քառասուն, բաժանելով յերիցագոյն որդիսն՝ զմեծամեծ խնամս պետութեանն. զառաջինն (Սմբատ) փոխանակ իւր Գունդստապլ (սպարապետ) կացոյց, որ և զամս յիսուն վարեաց արիաբար զկարևորագոյնն այն գործ պաշտաման, (յերկարակեաց քան զայլ եղբարսն եղեալ, և գրեաթէ 'ի մարտի նահատակեալ յամի 1276, առ թագաւորութեամբ եղբօրորդւոյ իւրոյ Լևոնի Բ։ ). — զերկրորդն՝ Բարսեղ՝ նուիրեաց եկեղեցւոյ պաշտաման, 'ի գերագոյն ամբարձեալ գահ եպիսկոպոսաց, տալով նմա զառաջնորդութիւն Դրազարկու վանաց՝ զոր ունէրն հանգուցեալ կաթողիկոսն Յովհաննէս, և հարկ է թէ ընդ նմին և զարքեպիսկոպոսութիւն Սսոյ, որպէս և կոչի յաճախ արքեպիսկոպոս՝ թէ և ոչ յիշի անուն աթոռոյն. — զերրորդ որդին՝ Լևոն՝ կացոյց Մարաջախտ, այլ և իշխանաց իշխան անուանեալ. — չորրորդին՝ որ Օշին կոչէր՝ ետ զպատիւ կամ զանուն Պայլուրեան, և ժառանգեցոյց նմա զԿոռիկոս, զոր կապտեալ էր յապստամբէն Վահրամայ. յետոյ և կրսերագունիցն որդւոց՝ 'ի զարգանալ տիոցն՝ ետ ըստ իւրաքանչիւր պատշաճի. բայց զպատիւ Թագադրութեան չնորհեաց Կոստանդնի՝ որդւոյ Հեթմոյ — Հեղեայ, դարձուցեալ 'ի նա և զԼամբրուն դղեակ, կամելով 'ի մոռացօնս արկանել զնախնեացն հակառակութիւն և զօրավիգն ունել զնա տան իւրոյ և արքունեաց. զի այր կորովի էր և նա՝ զօրութեամբ և գիտութեամբ, և ծանօթ աւագաց՝ ազգայնոց և օտարաց, և սահմանաւ մերձաւոր սուլտանին Իկոնիոնի, ընդ որում կարէր միաբանել և նեղել զտուն թագաւորին, որպէս և արարն իսկ յետոյ։ Իսկ ինքն Կոստանդին՝ որպէս ծառ մի մեծ բազմաստեղն և լայնատարած՝ 'ի մէջ նորատունկ ծառոց, հովանանայր հանուրց, և ոչ ոք իշխէր ճիկ հանել ընդդէմ նորա, այլ և խաղաղեալ սերտէին 'ի նա, ահարկու գոլով հզօրաց հպարտից, սիրարկու հեզոց և տկարաց [2]. և զօրացեալ բարձրանայր թագաւորութիւնն՝ ցորչափ երկարեաց նա զկեանսն, 'ի զօրութեան և 'ի փառս, որպէս յաւուրս Լևոնի. և ըստ երկարամեայ թագաւորութեանն՝ առաւել ևս տարածեցաւ և ծանօթացաւ ընդ հեռաւոր աշխարհս՝ անուն Հեթմոյ, « գովեալ և հռչակեալ յամենայն ազգաց և 'ի հանուրց » բերանոյ », ըստ բանից ժամանակակից յիշատակագրի։

Ն. Զայս օրինակ կատարումն էառ՝ եթէ ոչ բան կտակի, այլ զօրութիւն նորին և ուխտ սրտին Լևոնի. այսպէս 'ի գլուխ եհան Լևոն՝ զգործն մեծ, ոչ յանձին իւրում աւարտեալ և զրաւեալ, այլ իբրև հիմն հաստատուն զինքն դնելով և 'ի վերայ ամբառնալով զթագաւորութիւնն Հայոց, որ բաւեաց յետ իւր դար և կէս, յերկարատև քան զամենայն պետութիւնս քրիստոնէից հաստատելոց յաւուրս Խաչակրաց յարևելս, (բաց 'ի միայնոյ՝ 'ի կղզիացեալն Կիպրոսէ). որոյ ամենայն փառք և մեծութիւն և զարմանալի տևողութիւն՝ արգասիք են արդեանց Լևոնի. սկսեալ, որպէս օրէն է ասել գործակցութեամբն՝ յորէ պայազատութեան եղբօր իւրոյ

1 Տարէգիր Ս. Երկրին համառօտ. Phelippes, fix de Buemont, prince d'Antioche, espousa la fille dou roy Lyvon d'Ermenie, et ot tout le roiaume d'Ermenie; dont le Bail d'Ermenie le prist puis, et le mist en prison, dont il morut.

2 Յաւուրս ծերութեան նորա գրէր զնմանէ գորովաբար զյետագայ բանքս, երէց ոմն նշանաւոր անուամբ և յաւէտ մականուամբ, և արժանի հետազննութեան զարմին, 'ի ժամանակի՝ յորում զրաւեալ համարիւր Ռուբինեանցն. և 'ի կարծիս լինիմ թէ իցէ արդեօք թոռն կամ թոռնորդի Մլեհի 'ի հարճորդւոյն։ Իսկ բանքն են այս, զոր գրէ 'ի յիշատակարանս Աստուածաշունչ գրոց, վասն Յովհ. եպիսկոպոսի՝ որդւոյն Կոստանդնի. « Ո՜վ սուրբ եղբարք, ... յիշես- » ջիք յաղօթս ձեր զստացող գրոցս, զիմ քաղցր և բարի Պարոնն և » զիշխանաց իշխանն, զՊարոն Կոստանդին, զհեզն և զխոնարհն, » զաստուածասէրն և զքահանայասէրն և եկեղեցասէրն, զի Քրիս- » տոս Աստուած ընդ երկայն աւուրս պահեսցէ առողջ հոգւով և » մարմնով։ ... Ընդ նմին և զմեղաւոր երէցս զգծող ցանկերս՝ զԹո- » րոս Ըստեփաննոսս, և զծնողսն մեր յիշեսջիք Աստուած — ողոր- » մեայիւ, և Աստուած յիշողացդ և մեզ ողորմեսցի », և այլն։

Ռուբինի՝ յամի 1175, ցամն 1375, լի բովանդակ 200 ամ։

Ի յուշ ածելով արդ միանգամայն զոր անձամբն արար Լեւոն և զոր ետ առնել յետամնացիցն և յետագայից, անմարթ համարիմ խոհական մտաց և գիտակաց անցից պատմութեան՝ չխոստովանել, եթէ արդարև մեծ ոմն եղև նա, և գործեաց գործ մի մեծ, որպիսի թերևս ոչ ոք յայնմ դարու ժամանակի. և 'ի միջի վեհից կենցաղակից մարդկանն, (յորոց զչատս հարկ և կամք եղեն մեզ 'ի պատմութեանս յանդիման նմին կարգել մի ըստ միոջէ), ցուցաւ նա վեհագոյն։ Զի թէպէտ և առաւելեալ գտանիցի ոմն[1] 'ի նոցանէ՝ բազմագոյն և ճակատամուղ պատերազմաց յաղթանակօքն և վսեմութեամբ բարուց, այլ ոչ և նորոյ իմն տէրութեան կամ կրօնից հեղինակ գտաւ. և թէ ոմն[2] լայնատարած աշխարհաց տիրելով և ոչ վերջացեալ յարիական և 'ի քաղաքատես հանդիսից, կամէր աշխարհահռչակ տէր և ինքնակալ կոչիլ, սակայն ստիպեցաւ խոնարհել և առաջի անմիապետ ընկերհաշտութեանց գեղեցիկ աշխարհին Իտալիոյ. անգոսնեցաւ իրաւամբք վասն բազմապատիկ անգթութեանցն 'ի բնակիչս և 'ի բնակութիւնս Իտալացւոց, 'ի հուր և 'ի սուր դատելով. և առաւել փառասէր՝ քան փառաւոր ցուցաւ 'ի մեծութեանն։ Այլ ոմն պատկառելի հանուրց՝ առաքինութեամբք և կրկնակի իշխանութեամբք,[3] որով խոնարհեցոյց զբազմաց գլուխս, այլ ոչ որպէս ըղձայրն և նկրտէր՝ հնազանդեցոյց. և ոչ բաւեաց 'ի վերայ ամենայն ջանիցն՝ 'ի բազմամեայ դիտումն նպատակին ժամանել, յազատութիւն Երուսաղեմի՝ աշխարհախումբ խաչակրութեամբ։ Էին էին սոցա և այլոց վեհից՝[4] բազմապատիկ բարեմասնութիւնք. յորոց ոչ յետնեալ գոլով Լեւոնի, ոչ 'ի քաջութենէ, ոչ յերկայնմտութենէ, և ոչ 'ի պէսպէս ճարտարութեանց, հանդերձ խորատես քաղաքագիտութեամբ, և 'ի վերայ այսոցիկ մեծոգութեամբ և ազնըւութեամբ իսկ բարուց, լիապէս և հաստատապէս եցոյց, կատարեաց և կառոյց 'ի մէջ բազում գործոց՝ զմին, զմեծըն և զկարեւոր, զԹագաւորութիւն իւր, և նովիմբ ըզվերականգնումն և զհռչակ ազգին իւրոյ Հայկազնի. զի ոչ յաւուրս իւր միայն 'ի միջի ազգաց, այլ և մինչև ցայս օր՝ ծանօթագոյն յեղանակ կամ յայտնութիւն Հայութեան առ օտար ազինս՝ է ժամանակն իւր և գործ այսպիսի. առ որով աղօտանան փառափայլ արարք վեհիցն յիշեցելոց։ Մարթ էր մաշել ժամանակի, և մարթ է մաշել և ես զյոլովս 'ի յիշատակաց Լեւոնի, որպէս զյոգունց նախնեաց իւրոց և օտարազնեայց. այլ այս մի՝ անմաշ և անմահ մնայ 'ի միջի գործոց անմահացելոց՝ ըստ երկրաւոր քաղաքավարութեան. գերազանցեալ արդեօք զհանուրբք համավիճակօքն՝ 'ի տոհմային մերում պատմութեան, և ընդ գերագոյն անձինս դասակցեալ 'ի համաշխարհականին։ — Եւ զի իբրու 'ի նշխարաց և 'ի փըշրանաց դպրութեանց և դիւանաց՝ քաղեցան որ զԼեւոնէ մերս այս Դրուագք բանից, փափագելի և յուսալի ևս է՝ 'ի յայտնել նորոց յիշատակարանաց, հրաշափառագոյն ևս երևել և հանդիսանալ նմա. զոր՝ և ապագայից մերոց մաղթեմք հաշակել, 'ի պարծանս և յաւէտ յօգուտ Հայկազնեայցս գրոհի, 'ի ցոյց այլոց ազգաց, և յօրհնութիւն Ամենակալին. որոյ միայն է կամել և կազմել այսպիսի այր հանճարեղ՝ Յաղթող և Մեծ, նա՛ մանաւանդ Մեծագործ, որպէս արժան և իրաւացի վարկանիմ կոչել և կնքել զմերս Լեւոն Առաջին Թագաւոր Սիսուանայ։

1 Սալահէտտին։ 2 Փրեդրիկ Ա. կայսր։
3 Բազում անգամ յիշեալ Քահանայապետն Իննովկենտիոս Գ։
4 Որպիսիք հանդիպեցան 'ի ժամանակակիցս Լեւոնի և 'ի ծանօթըս 'ի պատմութեանս յայսմ, փեսայն իւր Յովհան Պրիէն, Առիւծասիրտն Ռիկկարդ, Դուքսն Վենետկոյ Էնրիկոս Տանտոլոյ՝ առողն Կ. Պօլսի, Փիլիպպոս-Օգոստոս Թագաւոր Փռանկաց, և այլն։



233. Յաղթանակ.

Քանդակ բրծուն գտեալ 'ի Կիլիկիա.

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ԵՒ ՈՒՂՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ

Թուականք որք 'ի սկիզբն ուղղագրութեանցս, նշանակեն զէջս գրոցս՝ յորս յաւելլքն են կամ ուղղելիք. իսկ բ տառ՝ զերկրորդ սիւնակ իջիցն. ուր ուրեք չիք այս տառ՝ իմացեալ լինի առաջին սիւնակն, կամ երկոքին ևս։

12. բ. Ջահան գետ. — Թէպէտ և խցեալ նշանակեցաւ բերան գետոյս՝ առ մուտս Նաւաց, սակայն Նաւք ոչ մեծք՝ կարեն յառաջ խաղալ և զարդիս՝ մինչև ցհարիւր բնամղոն, ըստ վկայութեան Անգղիացւոյ ուրումն։

12. բ. Ջահան գետոյ օժանդակ մի ևս արևմտեան առաջից՝ երևի 'ի քարտի՝ անստոյգ ընթացիւք, խառնիլ 'ի Նոյն՝ 'ի սահմանս Անազարբայ. զսա համարիմ կոչեցեալ երբեմն 'ի մերազնեայց՝ Մախթայ գետ. զոր յիշէ ժամանակագիրն, և ասէ առ Նովիմբ իջեվանեալ և վրան հարեալ ամիրային Տարսոնի 'ի գալն 'ի վերայ Սսոյ, յամի 1368, յառաջ քան զծանօթ արշաւանսն, յորում անօգնական մնացեալ՝ քաջօրէն սպանաւ Լիպարիտ։

30. Այծեմունք եւ Քօշք. — Գորշագոյն այծեամն՝ ըստ Պարքըրի Եոււմուրձա կոչի. որ ասէ զմորթ Նորին յըղկեալ՝ կապերտս ծնրադրութեան աղօթից յարդարել մսլիմաց։ — Ազգ բարձրապարիկ Քօշից, (զի մինչև յ'9000' երևին), յոմանց 'ի գիտնոց համարի Capra Ibex։ — Զսիւրահայեաց և երազոտն ազգն՝ ղազալ ըստ Արաբաց, թերևս լաւ ևս է կոչել Այծեմնիկ քան Ցամյր։

42. Կողմնակալք Կիլիկիոյ. — Ի շարս բիւզանդական կողմնակալաց Կիլիկիոյ՝ արժան է յիշել և զհայազգին Մլեհ Գէորգ, զորոյ կնիք կապարեայ՝ գտեալ յազ-




234. Կնիք Գէորգայ Մլեհի.

գային Թանգարանի Բարիզու, հմուտ դրամագէտն Շըլումպէրկէր՝ հրատարակեաց լուսաբանութեամբ։ Մլեհ ընկեր էր Աշոտոյ վիթխարի հսկայի՝ որ յելս կոյս Թ դարու՝ եկն 'ի Կ. Պօլիս, և զօրավար կարգեալ՝ յետ ամաց մարտեաւ քաջութեամբ և անկաւ 'ի պատերազմին Բուլղարաց. իսկ Մլեհի զերծեալ և դարձ արարեալ 'ի կողմանս Կապպադովկիոյ և Եփրատացւոց, կործեաց յԱրաբաց զերկոսին ամուր տեղիս, զԼիկանդոն և զԾամանդի բերդ. որք և 'ի շնորհս Նորա՝ կարգեցան յառանձին Թեմ, ըստ օրինաց վարչութեան Բիւզանդացւոց. ընդ որս յաւելաւ Նմա և տեսչութիւն գաւառին Մամեստիոյ. որպէս վկայէ կնիքն, ունելով զայս վերտառութիւն 'ի յոյն լեզու. Գէորգ Մլեհ Պռոտոսպաթար եւ արքունի զօրապետ, (տեսուչ) Մամեստիոյ, Անազարբայ եւ Ծամանդեայ։ Աւելի քան զքառասուն ամ կացեալ Մլեհի 'ի սպասու կայսերաց՝ բազում գործովք արութեան, վախճանեալ է իբր յամի 933։

44. Ռուբէն Ա. — Ընդ կարծողսն զսա ազգակից Բագրատունեաց և յերկրէ Նոցին, համաձայնի և Մարտիրոս վ. Ղրիմեցի 'ի չափաբան համառօտ գաւազանագրութեանն.

> « Պարոն Ռուբէն՝ զարմէ Նոցին,
> Զիշխանութիւն պահէ ազգին.
> Զըւեալ յԱնւոյ տարագնային
> Գայ 'ի յաշխարհն Կիլիկէին »։

Զժամանակ գալստեանն՝ հնագոյն ժամանակագիր հաւաստէ, գոգջիր և կանխէ իսկ՝ քան զգալուստ Գագկայ 'ի Փոքր Ասիա, գրելով յամի 1045. « Ի ՆՂԴ Թըւականութեան Հայոց էառ Ըռուբէն իշխան զԿիւլիկիա յայլասեռից »։

46. բ. Բազունի տոհմ. — Հեթմեանց մեծի զարմին համազօր և Նախադաս իսկ կարգելոյ 'ի յիշեալ պատմըչէն (Մատթ. Ուռհայեցւոյ), վայել էր ունել և սերունդս և յիշատակս Նշանաւորս, որոց չէր իմ պատահեալ ցկէտ տպագրութեան բանիս. իսկ այժմ յիշատակարան մի աւետարանի հրատարակեալ 'ի հեղինակէ Թորոս Աղբօր, (Բ. 348), ցուցանէ մեզ զոմն Պարոն Լեւոն Բազունեանց, և զորդիսն Պ. Լեւոն և Պ. Բազունէ. այլ զի հայրն և որդին համանունաբար Լեւոն կոչին, և չիք Նշանակ տեղւոյ և Թուականի, քննութեան և ստուգութեան կարօտի. ընդօրինակող մատենին՝ « 'ի ստոյգ և յընտիր » օրինակէ Ս. Սահակայ Թարգմանչի, յատակ և ականա-

կիտ», կոչի սոսկ Սիմաւոն գրիչ: Սմին նման սոսկապէս Սիմէոն գրիչ կոչի և ընդօրինակող ճաշոց գրոց՝ յիշեալ 'ի տեղագրի Գանձէ դղեկի, յամի 1335. բայց ոչ կարեմ հաստատել զնոյնութիւնն: — Նա և ժամանակագիրն Կիլիկիոյ հաւաստէ մեզ, զի յամի 1368 Պարոն Բազու որդի Բազունենց Պարոն Լեւոնի՝ էր Գունդստապլ Հայոց:

Ընդ Բազունեայց, Արծրունեայց, Հեթմեանց, Նաթանայէլեանց, Ասկուռսեանց տոհմից՝ յարելոց 'ի Յոյնս, յիշելի են և Մոլեւոնեանք և Ապլղասնանք, նոյին համախոհք:

52. Պարոն Լեւոնի գերութիւն. — Յայնմ ժամանակի Ս. Ներսէս Շնորհալի 'ի միջահասակի տիոցն գոլով, ախտակցաբար տրտմութեամբ գրէր՝ 'ի հնաւանդ օրինակի Առ. որս գրոց Աստուածաբանին, զոր և գնիւք ասէ թափեալ 'ի Յունաց, որք կողոպտեալ էին զայն՝ «'ի » վանորէից Հայոց. յորժամ եւ Թագաւորն Յունաց » յաշխարհն Կիլիկեցւոց, և ա՛ռ զնա յիշխանէն Լեւո» նոյ, որ էր Հայ ըստ ազգի և ըստ հաւատոյ, և աւե» րեաց զբազում վանորայս և եկեղեցիս, և զնշանս » տէրունականս խորտակէին, և անհնարին հարուածս » ազգի մերում հասուցանէին քինաբար: Եւ այս եղև 'ի » Թուին ՇՁԶ (1137). և երկրորդ (եղն) նորին արքայի » եղև 'ի ՇՂԲ, յորում և վախճանի առաջի Անարզա» բայ. և Թագաւորէ կրսեր որդին Մանուիլ անուն»:

52. բ. Թորոս Բ. — Հետաքննութեան մեծի հրապոյր է Նորալուր մականունն Պառաւախեղդ, զոր ընծայէ նմա ժամանակագիրն Աւետիք Տիգրանակերտցի, ոչ գիտեմ յորպիսի տուչութենէ. ցարդ աւանդութիւնն՝ սիրելի ընծայէր զնա տիկնոջ միոյ ազնուի բիւզանդացւոյ, և անդէպ է սիրոյ փոխանակ խեղդ հատուցանել:
— Դուստր Թորոսի (կին Հեթմոյ) կոչէր Ռիթա. իսկ զորդին՝ ոչ Ռուբէն այլ Լեւոն կոչեն հմտագոյնքն:

54. Մարաշայ առումն. — Իբր ութ ամօք յառաջ քան զյանդուգն ձեռնարկութիւն Ստեփանէի, սուլտանն Իկոնիոնի Մասուտ՝ 'ի ձեռն որդւոյ իւրոյ Գըլըճ Արսլանայ կորզեալ էր զՄարաշ 'ի Փռանկաց՝ տեարց նորուն (1149). զոր և ողբալով նշանակէր Ներս. Շնորհալի 'ի չափաբան յիշատակի Առակաց գրոց.

« Ի ժամանակ յոյժ անբարի,
Մինչ Գերմանիկն առեալ լինի,
Ժամանեցին աշխարհի գոյժ,
Քրիստոնէից գոլով անոյժ.
Թուական Հայոց հինգ հարիւր և ութ
Նա եւ ութսուն երկուք եւ ութ »:

63. բ. Թուականն 1347 ուղղելի է 1337:

64. Բերդորայք Կիլիկիոյ. — Յաւելլի են 'ի ցանկի անուանց նոցին՝ Պինակ, յիշեալն 'ի Տեղագրութեանս՝ յէջ 115. 85, Մոխրոտ, և Շուպլայ որք յիշեսցին յետոյ:

73. Պապառօն կամ Պապեռօն, Παπυρίον ըստ Յունաց. յիշի առ Զենոնիւ յամս 480–8, արգելարան եղեալ Վերինայ կայսրուհւոյ և այլոց աւագաց. յորոց Պամպրեպիոս Թեբացի՝ գահավէժ արարաւ 'ի պարսպաց նորին:

77. բ. Լամբրուն. — Ի հռովմէական մղոնաչափութեան Անտոնինեանց՝ Նամպիրոյ, Nampiro գրի, (եթէ ուղիղ է ընթերցուածն). և 'ի Պոդանդեայ ցնոյն՝ 17 մղոն նշանակի, անտի ցեգէաս (Այաս) 21: Լատինական անունդ համաձայն գտանի այժմեանն Նեմրունի:

77. Օշին Ա Լամբրունեցի. — Ըստ Չամչեան պատմահօր մերոյ (Գ, 10), Օշին նիզակակից Ալեքսի կայսեր՝ մենամարտեալ և խոցեալ իսկ՝ եհար և կառափնատեաց զհսկայ փռանկ մի, վասն որոյ և ընկալաւ զպատիւ սեբաստոսութեան և զիշխանութիւն Տարսոնի. բայց Աննա Կոմնենա՝ յԱլեքսիադն, զքաջ մենամարտիկն զայն կոչէ Ասպետ Արշակունի:

85. Բան մի Մաղաքեայ դպրի տարէգրի տայ կարծել, եթէ յառնուլ Լեւոնի 'ի կին զԿիռ Աննա՝ դուստր տեառն Լամբրունի, ընկալեալ իցէ և զբերդն զայն 'ի պաշտաման. քանզի ասէ, յետ յիշելոյ զմահ Կոստանդնի Արքայահօր (1263). «Եւ 'ի նոյն ժամու խառնեցաւ Լամ» բրոն ընդ Թագաւորին Հայոց»: Սակաւուք յառաջ եղեալ գուշակի ամուսնութիւն Լեւոնի, քանզի 'ի նմին յիշեալ տարւոջ նշանակի ծնունդ անդրանկան նորին:

97. Ստեփանոս Գոյներ Երիցանց. — Մերձաւոր սմին ժամանակաւ ոմն, յամի 1321, այսպէս դրուատէ զճարտար գրչութիւն և գիտութիւն սորա. «Հանդիպեալ » լաւ և ընտիր օրինակի (Աւետարանի), որ գրած էր » Ստեփաննոս Գոյներ Երիցանց, այն՝ որ լի էր և պատա» րուն յարհեստ գրչութեան, և ընդ բնաւս հռչակեալ. » նաև բանիւ կատարեալ և հոգւով լցեալ. որպէս ահա » յայտնի է իմաստնոց և ստոյգ գիտողաց. զի լի և կա» տարեալ էր արուեստիւ՝ 'ի բանս, 'ի բառս, 'ի լծորդս » և 'ի բացատս, և 'ի տրոհմունս առոգանութեանց»:
— Վասն մականուանն տեսցի ստորև 'ի բանն որ ըզԳէորգայ Սկեւռացւոյ:

101 Մխիթար Սկեւռացի. — Տասն ամաւ յառաջ քան զնուիրակութիւնն առ լեկաթ Պապին, իբրև այր ճարտար և բանաւոր՝ ընդ այլոց ոմանց ընտրեցաւ 'ի Հեթմոյ արքայէ, լինել իւր ուղեկից՝ յերթալն 'ի Թաթարս. «Եկն (ասէ Կիրակոս) և Մխիթար վարդապետ՝ » որ լինէր 'ի Սկեւռայն, գնացեալ անդ 'ի կողմանս ա» րեւելից. և Բարսեղ քահանայ՝ որ դեսպան էր Բա» թուին, ընդ նմա իսկ (Հեթմոյ) եկեալ էր»: Վասն յետնոյս գրէ պատմիչն Կիլիկիոյ, եթէ «Առաջնորդէր » նմա (Հեթմոյ) աբեղայ մի Բարսեղ անուն, որ և բազում » անգամ ճանապարհ արարեալ էր ընդ այն պողոտայ»:

104. Գէորգ Սկեւռացի. — Քեռին յիշեալ՝ է ինքն մեծ վարդապետն Գրիգոր Սկեւռացի: — ԶԳէորգայ երկասիրութիւնս՝ բազում գովութեամբ և յաւելուածով նշանակէ ժամանակագիր մեր, վկայելով զնա եւս լինել «Առաջնորդն Սկեւռայ, այր փիլիսոփայ և կատարեալ » իմաստասէր և անուանի: Սա գեղեցկագիր և ամենա-

» յարմար յօգնագունակ բայիւք և ճոխական իմաստիւք » զարդարեաց զամենայն աստուածաշունչ, զնուրբ և » զընդարձակ, զհին և զնոր կտակարանս Հայոց եկեղեցւոյն. ընդ որս և զԱւետարանն՝ Նախադրօք, գլխօք և » ցանկօք յղորդեաց, և 'ի վերայն դաս ասաց. և զՍաղմոսն նոյնպէս արարեալ, որ լաւ օրինակ է, այժմ գտանի առ մեզ, և աւելին 'ի վերայ՝ կարմիր գրով. յաւել » և 'ի Տօնացոյցս և 'ի ժամակարգութիւնս՝ ուղղակի, որ » Գոյն երիցանց կոչեցաւ »: Այս բան ցուցանէ ինձ՝ կարմրադեղով նշանակեալ Գէորգայ զայլայլութիւնս բանից կամ բառից 'ի սաղմոսս և յայլ ժամագիրս, որք զի քահանայից կամ երիցանց 'ի պէտս էին, կոչեցաւ Գոյն երիցանց, յորմէ ածանցեալ է և մականուն ճարտար գրչին Ստեփանոսի:

106. Սկեւռայ վանաց Միաբանք. — Յիշեալդ 'ի միաբանս վանացս՝ առ Կոստանդեաւ կաթողիկոսիւ, կամ որիշ յայնցանէ՝ է Ստեփանոս քահանայ ծեր, որ յամի 1295 ընդօրինակէր անդ աւետարան մի՝ « Ընդ հովանեաւ Ս. փրկչիս և կենսակիր Ս. Նշանիս, և մօր » Լուսոյ Աստուածածնի, որ է առընթեր անմատոյց » դղեկիս Լամբրունի ... (և աղաչէր յիշել զինքն) զտառապեալ և զմեղաւոր գծօղս. եւս և զեղբօրորդիս իմ, » զՅովհաննէս քահանայ և զԼեւոն սարկաւագ, և ըզ» Յովսէփ պատանի. վասն զի 'ի խնդրոյ սոցին 'ի պակասեալ ամաց և 'ի զառանցեալ տիոց և 'ի ծերութեան հասակի, շնորհօք բարերարին Աստուծոյ՝ աւարտեցի զսա . . . Յիշել 'ի Քրիստոս և զհարազատ եղբայր իմ զկոստանդին, որ 'ի սոյն ամի վախճանեցաւ, » և սուգ անբերելի եթող մեզ ... և սոյնդիս մանկանց » Նորին խը » ... պակասէ հետեւորդն. սկիզբն թերատ բառին խը՝ թուի նշանակել խնամակալ զինքն կացուցեալ:

113. Կուսաստան Սկեւռայ. — Զոր կարծեաք համարէի լինել, հաւաստեաց ոմն 'ի յիշատականացէ ուստեք, եթէ եղեալ է անդ արդարև կուսաստան, յորում երբեմն կուսանք 18 վաստակեալ զամս երեքտասան՝ անկեալ և ընդելուզեալ են չքնաղ վարագոյր մի տաճարին, որ և բովանդակ դարս պահեալ, ոչ յառաջ քան զշատ ժամանակ՝ խսպառ անհետ լինի յամենածախ տարերաց:

114. Ջլկանոց. — Ոչ այնքան ճռւայ՝ որքան Ջիլխանլը գեղջ պատշաճագոյն թուի կոչումնդ, որ 'ի Հ. Եւ. Ատանայ, և 'ի Հ. Մ. Մսսայ, կամ Ջըլգանլը՝ որ յարևելից Կեավուր տաղի և Պուլանըզի:

114. Լուլուայ բերդ. — Յիշէ Կոստանդին Պերփեռուժէն 'ի Թեմագրութիւնս (Ա), ցայն վայր՝ ընդ արևելս կոյս ձգելով զսահմանս փոքուն Կապադովկիոյ: Նոյն և 'ի վարս Վլասի Ա (Գլ. ԻԶ.), ասէ կորզեալ սորա 'ի Հագարացւոց զհզօր բերդն զայն, Κάστρον τό Λοῦλον λεγόμενον.

118. Գանձէ դղեակ. — այլայլութեամբ միոյ տառի (եթէ ուղիղ գրեալ իցէ,) ծանուցանէ Գրիգոր ոմն, յամի 1336 գրեալ Շարական « Ի Պուրջս՝ որ կոչի Գանցէ, » ընդ հովանեաւ Ս. Պաւղոսիս և Ս. Աստուածածնիս և » կենսունակ Ս. Նշանիս »:

129. բ. Կապանք կամ Նեղուցք անցից Ա Խաչակրաց. — Զբան Մատթ. Ուռհայեցւոյ այլայլութեամբ՝ այլ և կարևոր անուամբ գրէ ժամանակագիրն. « Եկին » Ֆռանկքն ընդ սահմանս Գամրաց և ընդ Նեղ կապանս Տօրոսի, զոր այժմ Խորձոր կոչի, ընդ Կիլիկիա » և ընդ Տրովադայ, որ է Անաւարզայ »: — Թուեցուցանեն բանքս աստանօր ոչ զընդհանուր աշխարհն Կիլիկիա՝ այլ որպէս 'ի վեր անդր նշանակեցաք, գաւառ մի յատուկ, որպէս թէ Գահքն Կիլիկիոյ, կամ մի 'ի վիճակացն յարևմտից Անազարբայ: Թերևս և նոյն Խորձոր իցէ կոչեցեալն արդ 'ի Թուրքաց Իճ-տէրէսի (140. 158):

133. Պոտանդոն. — Յանուն սորին և գետն որ առ երի անցանէ՝ կոչէր 'ի Թուրքաց Բուզանդ-սուի, ըստ Ժամանակագրի մերոյ:

138. Փաւստինուպօլիս. — Յառաջագոյն կոչէր Հահալ, Hahale, ըստ Կապիտոլինոսի:

142. Վաներ. — Յիշի նախ առ Բ Թորոսիւ, յորմէ գաղտագողի կորզեաց զայն՝ վատշուէր եղբայր նորին Մլեհ, ապաւինեալն 'ի հզօրն Նուրէտտին: Զայս աւանդէ Միխայէլ Ասորի, յորմէ երկրորդելով ժամանակագիր մեր՝ Վանսաւեր գրէ զանունն:

143. Գումբէթփոր. — Այսպէս արժան համարէի կարծեօք՝ ընթեռնուլ զգրեալն Cumbethfor 'ի Վիլեպրանտայ. գտի արդ Գումբէթւոր լինել, ըստ ժամանակագրի մերոյ, որ և յաւելու, եթէ « այժմ Իլիճա կոչէ » Թուրքն, յորմէ ջերմ ջուր բղխի ». և ցայսվայր և անդրագոյնս եւս ասելով Հայոց հալածեալ զամիրայն Տարսոնի, յամի 1368, ցուցանէ 'ի հարաւոյ արևմտից Սսոյ լինել զտեղին. և զի յարևմտից Մսսոյ եւս էր, արժան է քննել 'ի միջոցի նշանակեալ երից կողմանց՝ եթէ գուցէ՞ անդ ջերմաբուղխ աղբիւր, առ 'ի հաւաստել զգիրս Գումբէթւորի: Թերևս զայս և զիլիճա նոր անունն՝ նշանակէր յիշեցեալն 'ի պարգևագրին Լեւոնի լատիներէն Bagnigum, զոր գուշակէի լինել յանուն Բաղանեաց (143), և արդ աներկբայ համարիմ լինել զսա Բաղնէկունք գիւղ մերձ յԱտանա, 'ի գահս Կիլիկիոյ, որպէս աւանդի 'ի յիշատակարանի աւետարանի միոյ՝ գրելոյ անդ 'ի թուին ՉԽԱ (1292):

144. Գոներ. — Ոչ միայն վանք, այլ թուի յառաջ քան զայն և գեօղ բնակութեան լինել յայս անուն, զի բնիկ հայրենիք Յովհաննու Արքայեղբօր կոչի տեղին. որով և յայտնի՝ եթէ ոչ նոյն՝ գոնեա մերձ լինել 'ի Կոստանդնոց (146) գիւղ՝ չինեալ 'ի հօրէ նորին 'ի Պայլէն մեծէ:

146. Մանօթ. 2. — Մասամբ ևեթ ընդօրինակեալ

է Աստուածաշունչ գիրքս յԱրքայեղբայրն Յովհաննէ, որ գրէ յաւարտ գրոցն Սիրաքայ. « Ջեղկելիս ոգի, զՍիրաքայս գրող և զտաւիս ստացող. . . զՅոհ. եպիսկոպոս, զեղբայր բարեպաշտ արքային Հայոց Հեթմոյ, և զորդիս Մեծին Կոստանդեայ, աղաչեմ. . . յիշել սրտի մտօք »: Գրիչ մատենին է Բարսեղ ոմն, և միւս գրիչ՝ Նշանելի ազգատոհմիւ՝ Թորոս երէց Ռուբինեանց, որ գորովանօք յիշէ զհայրն Հեթմոյ Ա. և Յովհաննու, « զստացող գրոցս, զիմ քաղցր և բարի Պարոնն և զիշխանաց իշխանն, զՊարոն Կոստանդինն, զհեզն և զխոնարհն, և զաստուածասէրն և զեկեղեցասէրն և զքահանայասէրն . . . եւ զ'ի Քրիստոս հանգուցեալ եղբայրն իւր՝ զՊարոն Ճուֆրի, զքաղցրն, զհեզն, զողորմածն, զաղքատասէրն և զեկեղեցասէրն յիշեսջիք, զի Քրիստոս Աստուած զՊարոն Ճուֆրի՝ ընդ իւր սուրբ իշխանացն դասեսցէ »:

**147. Մարտիրոս վարդապետ 'ի Գռներ.** — Բազում ուրեք գրէ յիշատակս 'ի Նշանակեալ Աստուածաշունչ մատենին. որպէս. « Ես Մարտիրոս սպասաւոր և աշակերտ գրոց, ըստ ըղձի և փափագման սրտի՝ գրեցի զսա 'ի վանքս հռչակելի՝ որ Գռներ կոչի, մերձ 'ի Բարձրն կոչեցեալ բերդ, 'ի մեծ Թուականիս Հայոց ՁԾԲ, և յամսեանն մայիսի՝ ըստ Հռովմայեցւոց անուանց ամսոյս, որ օր ծե էր սորին ամսոյ. յորում լուաք 'ի Նոյն աւուրս՝ չար համբաւ. զի տէր երկրիս մերում չոգաւ 'ի Շամբն կոչեցեալ աշխարհ, հանդերձ Մուղալն կոչեցեալ զօրօք. և ըստ մեղաց մերոց՝ յաղթեալ յանօրինաց, փախստեայ եղև յաշխարհն Բաբելացւոց, առ Խանն Խազան կոչեցեալ. և աշխարհս մեր յոյժ 'ի տարտարոս անկաւ »:

**147. բ. Կատենոյ բերդ.** — Նորագիւտ յիշատակարան աւետարանի միոյ գրելոյ 'ի Հռոմկլայ՝ յամի 1248, ստուգագոյն ևս աւանդէ զանուն տեղւոյս, Կատենայ, կարևոր բանիւ, ասելով. « Թողեալ զհայրեննի բնակութիւն մեր զԲարձր դղեակն եւ զանմատոյցն զԿատենայ, և փախեալ յայլասեռից կարեաց, և վասն քաղցրութեան վերադիտողիս Հայոց Կոստանդեայ՝ որբոյ և առաքինւոյ, եկեալ բնակեցաք աստ, հովանաւորեալ իբրև զփախուցեալն 'ի տապոյ ամարանւոյ՝ առ Թաւոտ ծառոց ընդ շքով. . . Յայսմ վայրի (գրեցաւ) ձեռամբ յոգնամեղ գրչի Պետրոս երիցու որդւոյ Կոստանդին երիցու, ազգաւ Կատենայեցի »: Յիշէ զորդիսն՝ Առաքել և Կոստանդին և « զբարետոհմիկ և զբարեկեցիկ զերկոսին հարսունսն՝ զԱրեւ Թագուհին և զՏիրուհին, յորոց ոչ մին եհաս 'ի բերումն զաւակի, այլ տարաժամ և դեռաբոյսք՝ փոխեցան 'ի Քրիստոս, և անմխիթար սուգ թողին ինձ և որդւոց իմոց »: Ոչ կարեմ հաւաստել կամ հաստատել՝ եթէ զնոյն մի տեղի կոչիցէ բարձր և անմատոյց, թէ՝ որպէս առաւել կարծեմ՝ անմատոյց զիւրականն Կատենայ, իսկ Բարձր դղեակ՝ զմիւս և զանուանին Բարձր-բերդ իմանայ, որոյ և մերձաւորութիւն աներկբայ է՝ ըստ Տեղագրութեանս:

**149. բ. Սահմանք Բարձրբերդոյ.** — Նորընծայ յիշատակարանք հին մատենից՝ յայտնեցին մեզ աստանօր զանծանօթն 'ի ժամանակի Տեղագրութեանս՝ վանս մի, և գետ մի ախորժալուր հայկական անուամբք. վերյիշեալ վարդապետն այն Մարտիրոս աշակերտ Գէորգեայ Սկեւռացւոյ, 'ի միում 'ի յիշատակաց Աստուածաշունչ մատենին՝ զորոյ մասն մի ընդօրինակէր 'ի Գռներ, ասէ և վասն այլոյ մասին, « Գրեցաւ սա 'ի Թուականիս ՁԾԳ (1304), յամսեանն յուլիս, յերկիրս Կիլիկիոյ, մերձ 'ի բերդս Բարձր, յԱնապատս Խաչատրոյ, 'ի վերայ գետոյս Շղրկայ, 'ի քարանձաւ եւ 'ի նեղ տեղիս »: Նկարագիր բնութեան տեղեացն՝ 'ի դէպ գայ և մերձաւորութեան Անդրիասանց ուխտի, որ և հետևի 'ի Տեղագրութեանս:

**151. Լեւոնբերդ.** — Երկբայէի ընդ նոյն կամ որիչն լինել 'ի Լեւոնկլայէ. արդ համարիմ զսա որիչ, և մերձ 'ի Սիս, չինեալ 'ի Մեծէն Լեւոնէ, ըստ վկայութեան Ժամանակագրին, եթէ « Շինեաց և բազում բերդս և դղեակս, որոց մին է ըստ անուան իւրոյ. կոչի Լեւոնբերդ. զոր այժմ այլազգիք Լմբերթ կոչեն, որ չէն՝ այլ ամայի մնացեալ (է). և եկեղեցին Ս. Վասլի անուամբըն, որ նա ևս աւերակ է »: Աւանդէ նոյն ժամանակագիր՝ զի և 'ի կէս ԺԶ դարու՝ գէթ ըստ մասին չէն էր տեղին և ամարանոյ Մայսենց տոհմի Սսեցւոյ, յորմէ էր Թորոս Ակաթողիկոս. այն՝ որ արհամարհութիւն կրեալ, առանձնացաւ 'ի բերդն յայն, « և կեցաւ անդ և մեռաւ, և թաղեցաւ անդ 'ի Ս. Յովհաննէսայ դուռն, 'ի հարաւային որմին տակն. և 'ի ՌԲ (1553) թուին որ նորոգեցին զԼեւոնբերդին զեկեղեցին, նա զգերեզմանն 'ի Ներս առին »:

**151. բ. Խորին անապատ.** — Զդիրս Անապատիս ստուգէ չափաւորապէս՝ Ժամանակագիրն Կիլիկիոյ, այլ սխալէ զսկիզբն և զսկզբնաւորողն, զհետ երթեալ սխալման Յայսմաւուրաց ոմանց. քանզի ասեն վասն Ս. Գերմանոսի պատրիարքի Կ. Պօլսի՝ յառաջագոյն եղեալ մետրապօլիտ Կիւլիկիոյ, փոխանակ ընթեռնլոյ Կիւզիկիոյ, և չինեալ անդ զԽորին անապատ, փոխանակ Խորայի, որպէս գրեն ստոյգ պատմիչք վարուց Սրբոյն, Յոյնք և Լատինք, Նաև ընտիր հեղինակք Յայսմաւուրաց մերոց, Սրևեյցին Կիրակոս՝ որ և ուղիղ գրէ Կիզիկէ և Խորան, Նոյնպէս և Անաւարզեցին, և այլ հին Յայսմաւուրք լաւ ևս՝ Խորայ: — Վասն դրիցն և որպիսութեան Խորին անապատի՝ ասէ Ժամանակագիրն, լինել « այժմ անչէն և աւերակ, որ հայի ընդ արևմուտս առօտ (?). զոր 'ի Կիլիկիայ այժմ Հայք՝ Մեծ-ջուր ասեն, և Թուրքն Ուլու-սու կոչեն, և 'ի վերայ զլեառն՝ Թէքիրսին կոչեն »: Ծանօթք անուանց գետոյն և լերինն (եթէ գուցեն) կարեն հաստատել զանապատն արժանաքնին: — Յիշէ այլուր և զկարգադիրն՝ զՄեղրիկն Գէորգ, « 'ի սուրբ Ճգնաւորանոցն և 'ի Խորին անապատն յաշխարհիս Կիլիկեցւոց 'ի Սիս. զոր նորոգեաց Թորոս իշխանն՝ որդին Կոստանդեայ. զոր և այժմ աւերակ է.

» և 'ի վերայ դրանն գրեաց նա, (այսինքն շինողն ինքն),

Տէր Աստուած ողորմեա Խօշ Թորոսին »։

Զի՞նչ նշանակիցէ մակ անունդ Թուին Րուբինի, որ եթէ ստոյգ է՝ հարկ է թէ գրեալ էր Խաւշ։

— Հակիրճ յիշատակարան մի աւետարանի գրելոյ յամի 1311, 'ի նմին գրչէ՝ որոյ գրեալ է և զՇարականն (նմանատպեալ յէջ 152), պարզագոյն ևս ծանուցանէ զանապատն՝ 'ի Զոր Խորնի, հանդերձ որ 'ի նմայն եկեղեցեաւ, և զմիւսոյ վանաց անունն՝ այսպէս· « Ի Զորս Խորնի, ընդ հովանեաւ Սուրբ Տիրամօր և Սուրբ Նշանաց, 'ի խցկան միոջ, որ է 'ի հարաւակողմն Պերճեր անապատիս, 'ի խնդրոյ սուրբ և ընտրեալ կրօնաւոր քահանայի՝ Պետրոսի, ձեռամբ պիտակ անուն քահանայի Կոստ (անդնի) և ողորմելի գերւոյ Հեթմնցւոյ »։

154· Ակներ վանք եւ Յովհ· Արքայեղբայր· — Զոր հաւանօրէն ասէի՝ զկալ սորա երբեմն 'ի մենաստանիս յայսմիկ, արդ հաստատէ ինձ վկայութիւն ժամանակակցի նորին և գրչակցի· զի ասէ վասն աւետարանի գրելոյ « ձեռամբ Յովհաննու եպիսկոպոսի . . . 'ի սուրբ ուխտըն Ակներ, ուր յոլով ամօք նախ՝ նոցին միաբան էր գրեալ, և յոլով արդիւնք անդ սպառեալ »։ Յետ այսց բանից յաւելու գրիչն, (բայց սխալ իմն կամ պակաս նշմարի յընդօրինակութեանն)· « Ի թուականին Հայոց 'ի ՉԼԶ (1287) 'ի մարտի ամսոյ ԺԳ, 'ի սուրբ Քառասնորդացն պահս· որոյ Տէր Աստուած ողորմեսցի· յորոյ ոսկերսն ցօղ կողից կենարարին Քրիստոսի ցօղեսցի· ամէն »։ Յայտ է թէ պակասի բառն հանգեաւ, այսինքն մեռաւ· բայց ըստ այլ յիշատակաց երկեմա ևս յետոյ ցուցաք (յէջ 147) զվախճան Յովհաննու։

154-5 Գրիգոր գրիչ յԱկներ· — Զատ 'ի գրոցն յիշատակելոց 'ի կարգին, ընդօրինակեալ է սորա յամի 1325 և զՄեկնութիւն Թղթոց Պօղոսի որ առ Տիմոթէոս և Տիտոս· յորում՝ ընդ այլոց միաբանից և մերձաւորաց յիշէ և զհոգևոր հայր իւր Կոստանդին զաւակօք իւրովք, զքեռորդի իւր Կոստանդին քահանայ զորդի Մխիթար երիցու, և զորդի քեռորդւոյն զՊետրոս, և զկուսակրօն քահանայսն Գրիգոր և Միրովբ, « որք յղորդելն (զգիրսն) աշխատեցան »· զԲարսեղ քահանայ « որ զգիրքս կազմեաց, » և զԿարապետ՝ որ ծաղկեաց։

155· բ· Մինաս միաբան Ակներոյ վանաց՝ յիշեալն ընդ այլոց, ընդօրինակեալ է անդ յամի 1322, գիրս ինչ հոգևորականս, « 'ի բազմավրդով ժամանակիս, » յորում յաւար մատնեցաւ « պանծալի քաղաքն ծովահայեացն Եգէայն որ է Այաս· » և յայն սակս ողբալով ասէ, « խորտակեալ է հոգւոյ ոսկերքս »։

156· — Ժամանակագիրն Կիլիկիոյ, 'ի կէս ԺԷ դարու « այժմ յաւուրս մեր, ասէ, ըստ անուան վանիցն՝ տեղին Ակներ կոչի, և վանիցն յաւերակին՝ աղօրէն, այսինքն ջաղացք· զի ոչ ոք կայ 'ի նմա 'ի վաղուց հետէ »։

156· բ· Թիւրքթի վանք· — Ի նմին յայնմ ամի, 1335, յորում ասացաք յիշեալ զտեղիս զայս, Մանուէլ ոմն գրէ Շարական՝ անդ « 'ի մեծ և 'ի հռչակաւոր Անապատս՝ որ կոչի Թիւրքթի· (և մաղթէ՝ զի) երգ օրհնութեան և ձայն սաղմոսաց, և լուցումն լապտերաց և բուրումն անուշահոտ խնկոցն՝ մի պակասեսցի 'ի սմանէ՝ մինչև 'ի կատարած աշխարհի։ Ի խնդրոյ պատուական և երջանիկ առաջնորդի սուրբ ուխտիս՝ Տէր Գրիգորու, զոր Տէր Աստուած պահեսցէ ըստ կամաց իւրոց »։ Յետոյ կրկին յիշէ « զերիցս երանեալ և զծաղկեալ ալեօք զհայրապետն՝ զՏէր Գրիգոր· » և զխոշորութիւն իւրոյ գրչութեանն՝ հայցէ ուղղել « եղբայրաբար· զի ժամանակս ձմեռնային էր, և հիւսիսայինն սաստիկ, և տեղիքս լեռնայինք· և ես անարհեստ էի քերականութեան »։ Այլուր գրի 'ի մատենին· « Գրեցաւ Շարականս այս ձեռամբ Սահակ եպիսկոպոսի, և այլ կրօնաւորաց վանուցս, և Մարգարայ փիլիսոփային », որ է ասել երաժիշտ կամ քաջ երգող։

157· բ· Կօսիտառա եւ Խաւշ։ — Զկարևոր տեղւոյս այսչափ միայն ծանուցանէ Ժամանակագիրն, եթէ « Հայի ընդ արևելք 'ի գետն· » զորոյ ոչ յիշելով զանուն՝ այսչափ ինչ գուշակի՝ եթէ ջուրն իջանէր 'ի հիւսիսոյ կուսէ, և ամրոցն կայր յաջմէ նորին՝ յարևմտակողմն· և ոչ 'ի Փռիւգիա ասէ զսա, այլ աստի գնացեալ Րուբինի 'ի Տօրոս լեառն՝ 'ի կողմանս Փռիւգիոյ։ Յիշէ և զխաչն Կօսիտառացի՝ յաւուրս վերջին Կոստանդնի թագաւորի (1368)։ Համառօտ պատմիչ Րուբինեանց՝ ոչ լոկ բերդ՝ այլ և Երկիր Կաւսիտառոյ կոչէ· և անդ բնակեալ զՌուբէն Ա, յետ մահուան Գագկայ, « եւ անտի եկեալ 'ի գեօղն Կարմրուզաւլաւ »։ Տեսցի առորև զգեղջէս։

158· Կոպիտառայ բերդ· — Յառնուլ Շահ-Սուարայ զՍիս, և 'ի հակառակել տեղապահի նորա ընդ քաղաքացեացն, սոքա զերծուցին զպահպանակս իւրեանց՝ զշորեսին Աջն, 'ի ձեռն Հեթմոյ Սպիտակ մականուանեալ երիցու, որում յանձնեալ էին, վասն որոյ և Աջպան կոչէր· որոյ առեալ ընդ այլոց ինչ սրբութեանց՝ եբեր « 'ի Կոպիտառայ, առ Թորոս եպիսկոպոսն, և ամրացան 'ի բերդն »· բայց քաղաքապետն Սսոյ՝ « արար երդում և յղեաց մարդ 'ի Կոպիտառայ առ Սսցիք », և պահանջեաց 12,000 ղուռուշ, զի թոյլ տացէ նոցա դառնալ համարձակ 'ի քաղաքն· այլ յետոյ դրժեաց երդմանն, որպէս նշանակեցի այլուր։

162· Ծանօթ· Վահկա· — Զառումն սորա նենգաւ 'ի Կոստանդեայ, յիշեմ արդ՝ աւանդեալ 'ի Տարտելէ՝ նորագիւտ փռանկ պատմչէ թագաւորութեան և գերութեան վերջնոյն Լևոնի· որ ասէ զինեալս տասն թաքուցեալ Կոստանդնի ընդ մացառօք, և յանկարծուց հանեալ և արշաւեալ 'ի բերդն։

163· — Ժամանակագիրն Կիլիկիոյ ասէ՝ անդ « մինչև ցայսօր գտանի Դրախտ իմն· ասեն Սսացիք, եթէ 'ի Րուբենայ իշխանի որդոցն գոլ տնկեցեալ »։ — Յիշէ և զԹլկուրանցի բանաստեղծ կաթողիկոսն Յովհաննէս՝ սատ 'ի Վահկա թաղեալ (1525)։

163. Ստեփանոսի Վահկացւոյ ասի թողեալ, կա֊
րեւոր երկասիրութիւն մի հմտական, այլ զորպէսն ոչ
կարացի ստուգել։ Սորա քեռորդի Սարգիս երէց ընդ
ճարտար գրիչս ժամանակին դասի։

— Ի դարուց հետէ յ'ամարանոց կամ հովոց իւրեանց
արարին զՎահկա՝ կաթողիկոսունք Սսոյ. ուր 300 ամօք
յառաջ (1584), եկն Լէոնարտոյ եպիսկոպոս Սիդոնի,
Նուիրակ Քահանայապետին Սեքստոսի Ե, առ Ազարիա
կաթողիկոս, և խօսեցեալ ընդ նմա յերկար՝ հաւանեցոյց
'ի միաբանութիւն ընդ եկեղեցւոյն Հռովմայ, (որ և
գրեաց թուղթ՝ ստորագրութեամբ իշխանացն Սսոյ). և
ապա մատոյց 'ի դիմաց կարդինալի պաշտպանին Հայոց՝
ընծայս և սպասս, միթր մի ոսկեթել, սկիհ արծաթի և
այլ 25 սկիհս անագեայս, երկուս պատկերս Ս. Աստուա֊
ծածնի, այլովք հանդերձ [1]։

— Բ. Կաստաղօն. — Զսա ևս՝ յիւր ժամանակս՝ ան֊
չէն լինել ասէ ժամանակագիրն։

164. Կարմիր լեառն. — Մի 'ի վանորէից Կարմիր լե֊
րին՝ կոչի «յանուն Աստուածամօր». որպէս ծանուցանէ
յիշատակարան աւետարանի գրելոյ անդ յամի 1223։

166. Հաճնոյ վանք. — Կալուածք կամ հողք ինչ վա֊
նացս՝՝ Թըլլաճ կոչին, զոր գրաւեալ էին ապստամբ Խօ֊
զանցիք, ոչ բազում ամօք յառաջ։

167. Կինդռոսկոյ բերդ. — Վկայեալ 'ի պատմչաց մե֊
րոց լինել 'ի դաշտին Արճիասայ, ծանուցանի 'ի ժամանա֊
կագրէն Կիլիկիոյ լինել այժմեան ծանօթ քաղաքիկն Տէ֊
վէլի-Գարահիսար, որ կայ յարեւմտից հարաւոյ Արգէոս
լերին. եթէ ոչ բուն սա՝ 'ի դէպ է համարել մերձաւոր ամին
բերդ մի. որպէս նշանակի 'ի քարտս 'ի Մ. Հր. Նորին
Զէնկիպար կամ Զէնճիպար ? գայէ բերդ, որ թէ որպի֊
սի ինչ իցէ, ոչ գիտեմ. բանասիրաց Կեսարացւոց թող֊
ցի ստուգել զկարեւորս զայս մերոյ պատմութեան տեղի։

169. Կոռմօզոլոյ. — Նոյն ժամանակագիր վկայէ, զի
այժմ Կուրուզմայ-ղալայ կոչեն, որ հայի «ընդ արեւելք,
» և է այժմ աւերակ. և քանի տուն գտանի մերձ նորա».
ապա նոյն ինքն է Բուռուժ-Նահիէսի, զոր և Խոռոմզէ և
այլազգ ևս կոչել՝ ծանուցաք, յէջ 160։

178. Բ. Աջչէչա և Զօրլա, ուղղելիք են՝ Աջ-չէհիր
և Զօրլու։

181. Ի ցանկի բուսոց կողմանց Զեթունի Erysimum
(Velar ըստ Փռանկաց) շփոթեալ է ընդ Eryngium, որ
է Երնջնատակն կամ Երինճակ, իսկ առաջինն է ըստ հա֊
յումս՝ Ասփիկոյ խոտ։

182. — Զազգ մի բուսոց կողմանցս՝ զՄեղրածուծ՝ յի֊
շէ և բնախոյզ բժիշկ մեր Ամիրտովլաթ, գրելով. «փրա֊
» սիոն՝ որ է Մեղրածուծ, 'ի Զեթունոյ քարերն շատ կու֊
» բուսնի»։

185-6. Վահան եւ Յովհան գրիչք Զեթունցիք. —
Երկրորդն՝ յիշէ բազում դրուատեօք զորդի առաջնոյն,
զ' «Յոգնահանճար և բազմարեղուն ծնունդ, խոհեմն ի֊
» մացականութեամբ և կատարեալ իմաստութեամբ Գրի֊
» գոր վարդապետ, աստուածաբան և երջանիկ րաբու֊
» նապետ. զոր Տէր Աստուած երկար ամօք և անսայթաք
» կենօք վայելել տացէ. իսկ յետ աստեացս ելանելոյ
» ընդ երկոտասան վարդապետացն դասաւորեսցէ», և
այլն. . . «Այլ և յիշեցէք զհայր ստացողի գրոցս՝ զՏէր
» Վահան, քաջ քարտուղար և մեղսաքաւիչ քահանայ,
» որ և զ յետնեալս 'ի յուսումնասիրաց՝ բազում աշխատու֊
» թեամբ այսմ արուեստի արժանի արար, և յետ ստա֊
» ցողին՝ կրկին ստացող եղև մեր Նուաստութեանս, և
» ուսուցիչ կոչեցաւ մեծ աշխատութեամբ տարտամ սր֊
» տոյս։ Այլ և զծնողսն իւր՝ զԴշխոյս, և զեղբարքն իւր
» զԱւետիք քահանայն և Պրոխորոն սարկաւագն՝ որ յայսմ
» ամի (1629) հանգեաւ 'ի Քրիստոս. և զեղբօրորդիքն՝
» զՅովհաննէս դպիրն և զԿարապետն և զՆերսէսն և
» զԿոստանդինն»։

186. Զէթուն. — Ի կարգի եպիսկոպոսացն՝ երիցա֊
գոյն քան զնշանակեալքս, յիշի յամի 1534՝ Տէր Դաւիթ,
'ի մաշտոցի գրելոյ «ընդ հովանեաւ սուրբ ուխտիս Ս. Յա֊
կոբայ, և այլ սուրբ եկեղեցեացս՝ որ աստ կան»։ Գրիչն
է Գաբրիէլ որդի Կոստանդնի և Ոսկեայ։ Իսկ զառա֊
ջին յիշատակեալն մեր 'ի կարգին՝ զՅովհաննէս, 'ի նմին
(1586) ամի՝ ընդ նշանաւոր գիտնական վարդապետս
տանն Սսոյ դասէ վերոյիշեալ Նուիրակն Լէոնարտոյ։ —
Առ նովաւ և սուղ ինչ յառաջ, չորք իշխանք Սսոյ կոչէին,
Խաչեր սարկաւագ որդի Քէօյէ-սըդմազի, վարպետ Շատ֊
արեւ, Մահտեսի Մարկոս, և Խոճայ Փանոս։ — Թեր֊
ևս յաջորդ Դաւթի իցէ Արիստակէս վարդապետ
Զեթունցի, որ եկեալ կշտամբեաց սաստիկ զԹէոդորոս
կաթողիկոս, վասն որդւոյ նորա (Մանէս կոչեցելոյ),
յետ մահուան կնոջն՝ երկրորդ կին ածելոյ զկոյս. մինչև
ասել «ոմանց՝ թէ զվեղարն ևս էառ». ընդ որ սրտա֊
ւեալ կաթողիկոսին՝ խոյս ետ յամարանոց իւր (151)։ —
Ի սկիզբն ԺԷ դարու յիշի Մկրտիչ եպիսկոպոս, թերևս
նոյն ընդ յիշելոյն և յամի 1634։ Ի նմին ժամանակի կամ
խուն մի ևս յառաջ կեցեալ է Դաւիթ վարդապետ Զե֊
թունցի, զոր մի ոմն յաշակերտացն (Գրիգոր) յամի 1619,
կոչէ «այր գիտնական և քաջ փիլիսոփայ էր, յոյժ
» հմուտ հին և Նոր կտակարանաց» և այլն. գրողն զայ֊
սոսիկ՝ էր 'ի Լեհս։

188. — Յետին դիպուած և պատահար Զեթունի՝
ծանօթ և զգալի է տակաւին, աղխտալի հրդեհն, որ 'ի
հերուն (1884 'ի 10-22 սեպտեմբերի), ճարակեալ ծա֊

[1] Al sudetto Patriarca è stato donato per ordine del Cardinal Protettore, una Mitra di tela d'oro, un Calice d'argento, con sua Patena, Corporale e Borsa, un Corporale d'armisino ricamato di filo bianco, due Quadri della Madonna, 25 Calici di stagno con le loro Patene, atteso che in molte chiese celebravano in calici di legno, di vetro e di creta. — *Relazione del Vescovo di Sidonia alla Santitá di N.S. Sisto V, addi 19 aprile* (1586).

խեաց զմեծ մասն մի քաղաքաւանին, տունս 500 և կըրպակս իբր 100, որ է աւել գրեաթէ զողջոյն չուկայն: — (Արեւելք Օրագիր, Ա, Թիւք 210. 211):

— Նոր ծանօթութիւնս և առաջին հայերէն հրատարակութիւն զտեղւոյս՝ 'ի լոյս ընծայեաց 'ի սկիզբն այսր ամի (1885) 'ի Կ. Պօլիս, Յակոբ Յ. Ալահվէրտեան, մակագրեալ՝ Ուլնիա կամ Զէյթուն լեռնային աւան 'ի Կիլիկիա. Նկարագիր տեղական, կենսական, բանասիրական եւ լեզուաբանական. յաւէտ զյետին մասն բացատրելով, գաւառական խօսիւք նոցին և բառիւք: Ի պատշաճից Տեղագրութեանս՝ յիշէ, ոչ հեռի յաւանէն զկիւրէտին լեառն և բերդ (յէջն 10), զԶաւտար՝ տեղի զճանապարհայն Զեթունի (130), զչորեսին թաղս աւանին (11) կոչեցեալս Վերի թաղ, Օրթա-մահալլէ (միջին թաղ), Ղարղալար և Պօշ-պայըր. յետոյ յաւելու և զՎարի թաղ (13), Ս. Սարգիս եկեղեցեաւ. իսկ առաջնոց եկեղեցիքն են, Ս. Գրիգոր Լուսաւորիչ, Ս. Աստուածածին, Ս. Յակոբ, և Ս. Յովհաննէս: Յորմէ Ս. Յակոբայ (որ շինեալ է յամի 1847), ազուցեալ է հին վէմ արձանագրաւս այսուիկ.

« Շինեցաւ տաճարս ի թվին Հայ ՋՂԴ (1545) ի հրպեթեան (հայրապետութեան) Տն Սիմէոն կթին (կաթողիկոսին), Ի բռնակալութե Տաճկաց Սուլիման խոնդքարին. զոր 'ի չայժէ կործանեալ էր, նոր նորոգեց ձեռամբ մլտեսի Գաբրիէլն »:

Ի բնական բերոց և 'ի սեռէ բուսականաց՝ յիշէ բազում տեսակս քաջ գիներբեր այգեաց (64) և պտղոց, և յայլոց ազգաց՝ զԳաթ 'ի Պրիտ լերին, զՇինկիրար վարունգ, զՄուշկ՝ ոչ սովորական անուանեալն, այլ կանգառաձև իմն բթաչաքի մշկահոտ, զՋաղացոխ տերևախիտ խոտ (95): Ի հաւուց ազգէ՝ զկաքաւ չատ՝ յառապարս (68): Գլխաւոր բերք երկրին և վաճառք՝ են խաղողն և չամիչ, մեղր, երկաթ, և մորթ այծենի: — Առ գրուած հեղինակին աւաքեմ զցանկացողս կենսական և Բանասիրական գիտելեաց, նշանակելով 'ի ստորև զցանկ բովանդակութեան գրոցն (յ'200 էջս փոքր ութածալ)[1]:

193. Ֆռնօս. — Զոր փափագէի և յուսայի գտանել 'ի թերատ յիշատակարանի Մարգարէի գրչի, զանուն Ս. Կարապետ եկեղեցւոյ, գտի զնոյն յիշատակեալ յաշակերտէ նորին Վասիլ աբեղայէ և յեպիսկոպոսէ միոյ, յամի 1590, որք գրեն 'ի կռան աւետարանի ընդօրինակելոյ 'ի Յովհաննէ Արքայեղբօրէ, և նորոգեալ դնեն « Ի դուռն » Ս. Կարապետին, 'ի գիւղաքաղաքն 'ի Ֆռնաւս, 'ի կա» թողիկոսութեան Տէր Ազարեայ քաջ Րաբունապե» տին, և յեպիսկոպոսութեան Տէր Խաչատուր արհեպիս» կոպոսին, և Տէր Յակոբ եպիսկոպոսին, և Տէր Թորոսին ». որոց առաջինն՝ երևի վիճակաւոր Ֆռնօսի, երկրորդն՝ նորոգող աւետարանին. ստացողն՝ Մարտիրոս քահանայ, որդիքն՝ Հազարշահ, Սարգիս և Բարդողիմէ: Գրիչն Վասիլ՝ յետ կնոջ իւրոյ (Նունիայ) և վաղամեռիկ որդւոյն՝ աղաչէ յիշել « զմեր վարժապետն զՄարգարէ » քահանայն, որ ոչ ժամանակեաց, այլ փորձանաց » հանդիպեցաւ. Աստուած ողորմի իւր հոգւոյն. Ամէն »:

Ի Ֆռնօս վախճանեալ է Ղազար կաթողիկոս Զեթունցի, յամի 1547:

193. բ. Շիպլիկլի. — Թերևս կրիցէ զանուն Շուպլայ կամ Շուպլաս բերդի, զոր յետ գերութեան Պարոն Լեւոնի՝ (1138-9), եկն գողանալ Մէլիք Մահմուտ կամ Ահմատ Դանիշմանեան (52), « և բազում մարտիւք մարտուցեալ և նետս անթիւս հեղեալ, ոչ ինչ կարաց » առնել բերդին. և այնպէս գնալով ընդ կատարս լերանցն որ Կուլլայ կոչեն՝ գնաց յաշխարհ իւր »: Զայս բան Ուռհայեցւոյն կրկնեալ Ժամանակագիրն Կիլիկիոյ, կամեցեալ է նշանակել և զնոր անուն լերանցն, այլ ոչ գիտելով՝ դատարկ թողեալ. և չէ օտար համարել զայն 'ի չորս Կուկլակայ լերանց:

196. Մեծքար. — Յետ Յակոբայ կաթողիկոսի թուի առաջնորդ վանացն և թեմին կացեալ Գրիգոր Անաւարզեցի, զի գրիչ ոմն մերձաժամանակ՝ կոչէ զնա Մեծքարեցի: — Զտեղի վանացն՝ ամայի մնացեալ առէ Ժամանակագիրն Կիլիկիոյ, և կոչիլ Պլխվի?, այսպէս համառօտ գծեալ:

201. Գայլու վանք. — Ժամանակագիրն Կիլիկիոյ կարևոր ծանօթս տայ զտեղւոյն և զանուանէ, և զշինողէն, որ է Մեծն Լեւոն. « Եւ ասեն ոմանք՝ թէ եղեալ է » երբեմն որ վասն սրբութեանն վանացն առաջնորդին » կամ միաբանիցն, որ գայլն է արածեալ զոչխարսն, » վասն այն կոչի Գայլ վանք. և այժմ Սսացիք Ջերմ» աղբիւր վանք կոչեն, որ է հանդէպ Սսայ »: Զնոյն և այլուր ասէ հանդերձ Սուրբ անուամբ տեղւոյն կամ պաշտպանաւն, « Վանքն Սուրբ Աստուածածնի Ջերմաղ» բիւր ». յաւելու և երկբայելի ոմն առաջնորդ կարգեալ յամի 1293 « Բասիլիոս եպիսկոպոս, որ է եղբայր? Լե» ւոնի Բ թագաւորին »: Հեթմոյ Ա այսպիսի որդի ոչ յիշի այլուր, բայց եղբայրն Բարսեղ եպիսկոպոս առաջնորդ Դրազարկու, որ բազում ամք յառաջ քան

1 « Մասն Ա. Դիրք. Շէնք. Թիւ բնակչաց. Եկեղեցիք. Վարժարանք. Վանորայք: — Մասն Բ. Ծնունդք և Մկրտութիւն. Հագուստ, տնական կարասիք և կեանք. Ուտեստք. Լուացարարութիւն լաթեղինաց և մաքրութիւն մարմնոյ: Բարոյք. Կրօնական և Բարոյական հանգամանք. Ազգային կեանք: Ընկերութիւնք: Երկրագործութիւն. Արմտիք. Բոյսք. Կենդանիք: Արուեստք և վաճառականութիւն: Որսորդութիւնք: Նշանատուութիւն և Հարսանիք: Գաղղիական ախտ, Հիւանդութիւն և Մահ. Հանդէս թաղման: — Մասն Գ. Աւելորդապաշտութիւնք. Օրհնութիւնք կամ Բարեմաղթութիւնք. Անէծք. Երդմունք. Վրէժխնդրութիւնք. Առակք. Ցանգաւոր զրոյցք: Պատմութիւնք. Աստեղանունք, Հանելուկք: Տէրունական աղօթք Զէյթունցւոց: — Բառք՝ Գործածականք, Գիտականք, Երկրագործականք և Բուսաբանականք »: — Բառքն առանց որիշ որիշ դասաւորութեան նիւթոց՝ ըստ այբուբենից կարգեալ են 'ի վերջ գրոցն:

զայդ Թուական վախճանեալ էր. այլ միւս ևս շփոթութիւն մուծանէ հեղինակդ, սակաւ մի յառաջ ոչ եղբայր այլ զմի յեօթն որդւոց Բ Լեւոնի թուելով « զԲասիլ՝ որ » եղեւ եպիսկոպոս »: Սակայն և յորդիս սորա միայն Ներսէս քահանայացեալ է և վաղավախճան եղեալ:

201. բ. Մոկոն. — Համմէր՝ յՕսմանեան Պատմութեան յիշէ բերդ մի 'ի սոյն անուն, կամ Մեւկան (Mokan, Meucano), 'ի կողմանս Գարամանիոյ, զոր նուաճեաց Կէտիկ Ահմէտ յամի 1471, և ապա գնաց 'ի վերայ Լուլուայ:

206. Թիլ. — Ջառումն Թլոյ յԵգիպտացւոց՝ յամի 1304, ցաւակցաբար յիշէ Նախածանօթ մեր վարդապետըն Մարտիրոս, աշակերտ Գէորգայ Սկեւռացւոյ. « Ի » Թուականիս ՉԾԳ, յամսեանն յուլիս,... եկին մահմետական զօրքն 'ի Շամբէն, և առին սրով զբերդն » Թիլ. և ուխտազանց եղեալ դաշանցն՝ կոտորեցին զորս » գտին անդ. և բազումք փախստական եղեալ 'ի նոցանէ՝ (կորեան) ջրասոյզ եղեալ 'ի մեծ գետն Ջահան »:

206. բ. Համուս. — Ի վախճան տէրութեանն Հայոց՝ յամի 1374, յիշի Լեւոն Համուսցի, հրաւիրակ առաքեալ առ Լեւոն վերջին Թագաւոր, ըստ Տարտելի փռանկ պատմչի:

210. Կովառա, գրի ողեալ և Կովռա. և յայտնի լինել 'ի գետեզերին Ջահանայ. զի գրէ Սմբատ, յամի 1322 'ի մեծ արշաւանին Եգիպտացւոց՝ « Հեծեալն որ իջեալ էր » առջև Կովառայ՝ կամուրջ կապեալ էին նաւերով 'ի վերայ գետին ». տպագիրն սխալ եղեալ է առջեւ կառոյ:

211. բ. Անցմնցուկ կոչելի է ուղղագոյն ևս զձորակն և զջուրն որ ընդ սյն անցանէ. յորոյ վերայ արկեալ էր կամուրջ 'ի վաղ ժամանակաց, և յետ բարձման տէրութեան Հայոց՝ պայազատ ոմն յազնիւ տոհմէ, Գրիգոր որդի Պաղտինի և եղբայր Լեւոնի, 'ի միջոցի 1450–60 ամաց նորոգեաց զմեծ կամար նորին, կամ որպէս Ժամանակագիրն ասէ, « զմեծ աչքն որ փլեալ էր. որ այժմ գիրն 'ի » վերայ ճակատի կարմնճին կայ, որ հայի ընդ արեւմուտս. » յիշատակարանն և անուն Գրիգորի 'ի վերայ Թուականին »...: Պակասէ և Թուականն և արձանագիրն յօրինակի գրոցն: Այս կամուրջ է՝ որում դարու միով յառաջ (1369), յանձնէր Քաջն Լիպարիտ առ վերջին Կոստանդին Թագաւոր՝ զգուշանալ քաջ, զոր ոչ արարեալ նորայոցն՝ կալան զայն Թշնամիքն, և 'ի դառնալն՝ սպանին զզօրավարն:

212. Սիս. Բուսականք. — Հանգոյն Եղեգանն՝ յիշի յայլմէ Բժշկարանէ մերմէ՝ « Նփլն, (կամ Սփլա) ծառ է, » 'ի Սիս լինի »: Նէֆլէ Արաբացւոց, ըստ Պուասիէ բուսաբանի է Erigeron trilobium, Պառվու-խոտ կամ Celsia parviflora Dene.

214. բ. Բազմաբնակութիւն Սսոյ. — Զոր ականատես Գերմանացին առ Մեծաւն Լեւոնիւ անցիւ ասէ զբնակիչս Սսոյ, Ժամանակագիրն մեր, (ոչ գիտեմ յաւանդութենէ՝ եթէ 'ի գրոց), ասէ. « Սիս քաղաքն՝ 'ի » ժամանակի Թագաւորացն ՂԴՌ (94,000) խանայ էր՝ » խարած տուող, բաց 'ի յազատացն. և այժմ (համարիմ 'ի կէս ԺԷ դարու), փոքր պարոնութիւն եղև, և » չորս սուպաշըլըխ (ջրպետութիւն) ամէնն. և նստի 80 » դրամով ղատի, որ յետոյ 'ի 150 ղապուն? արարին » (յաւելին) ղատիքն. և է քաղաքն աւերակ, և տունս » Հայ և Թուրք՝ ոչ աւելի քան զ500. և բուն Սսեցին » 'ի սմա այժմ 150. և խանայս աւար ըզը ? ԺԱ (11), և » սանձախն ամենայն ԼԶ (36) »: Եթէ ուղիղ համարիցի թիւն 94,000, և խանայն՝ տուն, կարի ընդարձակ համարելի է Սիս հանդերձ արուարձանօքն. զի գէթ 500,000 ոգիս պահանջէ այդ թիւ բնակարանաց. ընդ հակառակն յետին թիւքն 11 և 36՝ յոյժ նուազք, թէպէտ և աղաւաղ և անիմաստ են բառքն որ յառաջ քան զայն թիւս:

Պարտէզ. — Վասն վերոյգրեալ Պարոնին Գրիգորի ասէ Ժամանակագիրն՝ տնկեալ « Թուրունձի պախչա » որ այժմ անհետ եղեալ է, որ է 'ի հիւսիսակողմն քաղաքին Սսոյ, մերձ Ջրհորոյն և աւերակ Բաղանեաց »: Զարդիս՝ յարեւմտակողմն քաղաքին և ոչ սակաւ բացագոյն՝ նշանակի Թուրունձյու գեօղ, այլ ոչ գիտեմ 'ի չաւուիղայ գրիգորատունկ Թրրընջեննեաց ունիցի զանունդ՝ եթէ յորիչ եղեալ անդ տնկոց: — Նկատելի են 'ի բանիդ Ջրհորն և Բաղանիքն, իբրև սակաւամասնեայ յիշատակք հասարակաց շինուածոց և պիտանեաց այնպիսւոյ արքունական մեծի քաղաքի: Զյետինն (Բաղանիս) « շինեաց և նորոգեաց » նոյն ինքն Պարոն Գրիգոր, ըստ նորին գրչի: Ի նմին ժամանակի և սուլտանն Եգիպտոսի (Խօշղատամ) ընդ որոյ իշխանութեամբ էր Սիս, « եկեղեցի մի՝ մինարէլի ձաղի մի շինեաց. և երբ զԴարպասի ջուրն 'ի գուռն ճամուն՝ կամարաւ, աղբիւր վազեցոյց. որ կայ 'ի ճակատ աղբիւրին թվականն շինողին. » և 'ի Սսուն խարաճէն՝ 3000 դրամ վախըֆ արաւ ճամիին մուղրոցն և սպասաւորացն մինչև ցայսօր »:

Դարպասն. — յոր առաջնորդէ մեզ բան Ժամանակագրին, այս ինչ է ըստ նորա կամ ըստ իւրում ժամանակի. Մեծն « Լեւոն շինեաց 'ի Սիս և կառոյց և հիմնարկեաց զհաստահիմն և զհոյակապ, զհռչակելի, զբարձրաշտարակ, զգմբեթաչէն սուրբ Կարուղիկէ տաճարն՝ » 'ի յանուն Էջմիածնայ, և 'ի յօրինակ Ս. Յակոբայ Երուսաղեմի, զոր տեսանողքն վկայեն. ապա (բայց) » զԹվականն ոչ գտայ, զի այժմ անչէն է. որ Թէպէտ » հինգ խորանն այլ ողջ է, սակայն ապականեալ է մէջն » 'ի գազանաց և յանասնոց և 'ի յանօրինաց. որ այժմ » 'ի Սսացոց ոմանք՝ Դարպաս ասեն սմա ». այլ բանք իւր ցուցանեն՝ զի մեծ (և Ա) եկեղեցին՝ դաստակերտ Լեւոնի, Ս. փրկիչ քան Էջմիածին է կոչելի: Առ սովաւ, յիշէ նոյն հեղինակ, « բերեալ Թաղեցին զմարմին Քաջ » Լիպարիտին, 'ի Սըսայ պարսպին 'ի ներս, որ այժմ » Դարպաս կոչեն, մերձ եկեղեցոյն, որ այժմ եկեղեցին » աւերած է. և Թուրքն կոչեն զգերեզմանն Լիպարիտին՝ » Աղձա-պապայ »: — Յամուր պատուինի երևի փոխեալ Դարպասն՝ 'ի պատեհ ժամու. որպէս յամի 1461 յապստամբել բնակչացն 'ի Մէլիք Էօմէրէ՝ մտին անդր Հայք և Թուրքք. իսկ Էօմէր ծակեալ զպարիսպն՝ եմուծ

Թուրքմանս 'ի Դարպասն, այլ վանեցան արտաքս։ Ցիշին յայնժամ Նուազի 'ի Դրանց դարպասին՝ Ներքինն և Պլուզն (փոքրն)։ — Շփոթ ինչ երևի տեղեաց կամ շինուածոց Դարպաս կոչմամբ, այլ հաւանելի է՝ զի արքունիք Լևոնի բովանդակէին 'ի նոյն անուն և զապարանսն և զկաթողիկէ եկեղեցին և զաշտարակաձև շինուածն. զնոյն իմանամ և 'ի նորաձև բանէ ժամանակագրին, եթէ Լևոն Ա «Շրջապատեաց զԿիլիկիա [1], և տուն շինեաց իշ» խանութեան իւրոյ, որ այժմ աւերակ է, և ունի պա» տուհանս. Դարպաս կոչի և (որ) ընդ արևելս հայի։ » Նոյնպէս և իշխանաց տունս, որ այժմ և նա ևս աւե» րակ է, որ պատուհանն նոցա նոյնպէս յարևելս հայի»։

216. Բերդն Սսոյ. — Թէ որպիսի՞ շինուածս և մասունս ունէր, ոչ յիշի առ ժամանակագրիս և ոչ առ այլս. բայց յիշէ սա ուրեք 'ի հարևանցի զԴրուռն նորին և զՊարսպացն, և տայ գուշակել մեծագործս և չքնաղս. զի 'ի տիրել Ռամազան տոհմի մեծագոյն մասին Կիլիկիոյ՝ մերձ 'ի կէս ԺԶ դարու, «տարեալ զՍըսայ բերդին և զպարըս» պին Դուռքն, զմինն՝ Ատանու բերդին դուռ արար, և » զմիւսն՝ կարմնճին»։

Այլեւայլ շինուածք եւ տեղիք. — Զատ 'ի սակաւուց վերոյիշեցելոց հասարակաց տեղեաց քաղաքին Սսոյ, գտանեմ առ ժամանակագրին մերոյ յիշեալ և այլս սակաւս. յորոց մի՝ Ղարսն Սսայ, ոչ գիտեմ զմասն ինչ բերդին իմանայ, եթէ զայլ տեղի. և 'ի նմին գոլ ասէ Պազար (վաճառանոց), ուր յամին 1479 գտաւ 'ի ձեռս Թուրքի միոյ կորուսեալ Աջ Լուսաւորչին և գնեցաւ։ — Մարատաճ, զոր կարծեմ Դիտանոց, ըստ մարասա, մերասիտ արաբացի բառից, քան Հիւանդանոց՝ 'ի մերձա բառէ, որ հիւանդս նշանակէ. և մարթ էր յայս կարծիս միտել՝ ըստ հետևեալ բանից ժամանակագրին, որ ասէ. «Զապել Թագուհին շինեաց 'ի Սիս Հիւանդանոց մի, » և 'ի մէջն Բրգայ (աւազան), և հայի յարևմտեան դուռն » 'ի Սսու բերդն, զոր այժմ Մարատաճ կոչի, և աւերակ » է. ու՞չ սակաւ ջուրն ոչ գայ, բայց տեղն յայտնի. և 'ի » չորս կողմն գռաերով հոտեալ է. զոր և այժմ հանա» պազ 'ի նմա Թաղեն. և 'ի մէջն դարիպ և դուրսյար և » փոշայ՝ ոչ է պակաս, նոյնպէս և 'ի Քարվանաց (կա» րաւանք), և ոչ թէ յարաժամ։ Եւ այս օրինակ գիր » գտաւ 'ի վերայ դրանն, թէ

## Կատարեցաւ յարմարումն Հիւանդաւ նոցին հրամանաւ մեծաւ փառաւք Քրիստոսասէր Թագուհւոյն Զապելի,'ի Թուականութեանս Հայոց ՈՂ ամին »։

Բաղդատեսցի արձանագիրս ընդ հրատարակելումն 'ի կարգի Տեղագրութեանս (յէջ 223)։ Որպիսի և էր շինուածս այս Մարստան՝ կործանեցաւ 'ի ժաժէ՝ յամի 1642 յամսեան յուլիսի։ — Ընդ Հիւանդանոցին արժան էր խնդրել և զԱղքատանոցս՝ շինեալս 'ի Մեծէն Լևոնէ։

Եթէ զայսոսիկ վասն աղքատաց, իսկ վասն մեծատանց, նա մանաւանդ վասն իւր և աշխարհին մեծութեան, հաստատեաց առաջինն այն Թագաւորաց Սիսուանայ՝ զփողերանոց կամ Դրամատուն, որպէս հանոյ Թուեցի կոչել, զի ոչ յիշի հայերէն բառիւ, այլ լատին կամ իտալականաւ՝ առ Թագաւորօք մերովք՝ յօտարաց, և արաբականաւ 'ի ժամանակագրէն, որ ասէ. «Սա եւտ տալ » զարսյս արծաթոյ 'ի Զկլյան Սսու, որ տունն այժմ նովին » անուամբն Տարասխանայ կոչի, և է աւերակ. և դրամն » ուրեք ուրեք 'ի մօտն տեսանի»։

218–9. Կաթողիկոսունք Սսոյ. — Ըստ ժամանակագրիս մերոյ, Կարապետ կաթողիկոս՝ յետ ամ մի պարապութեան աթոռոյն՝ յաջորդէ զԳրիգոր Մուսաբէկենց, և յետ 36 ամաց (ինքն 26 գրէ), վախճանի 'ի ՋԻԶ Թուին, որ է 1477–8. փոխանակէ զնա Ստեփանոս 'ի նոյն ՋԻԶ Թուականի։ — Զառաջինն յերեցուն Յովհաննէս կաթողիկոսաց՝ կարգէ յամին 1488, և 'ի միւսում ամին (1489) զհռչակաւոր Թլկուրանցին. իսկ զերրորդն և զյաջորդսն՝ ըստ ժամանակին որպէս կարգեալ է մեր (յէջ 218)։ — ԶՏիրատուր՝ հակառակորդն Ազարիայի, ծանօթն յետնոյս՝ Նուիրակ Պապին Լէոնարտոյ՝ վկայէ լինել մի 'ի գիտնագոյն վարդապետաց տանն Կիլիկիոյ և եպիսկոպոս Տիւրիկի, *Daradur Mortabitto* (վարդապետ) in Diunghir, ըստ տպագրին։ — Այս Ազարիա Ա, որ գրեաց գիր միաբանութեան ընդ Հռովմայ՝ վախճանեալ և թաղեալ է 'ի Բերիա. Բ Ազարիայն է հրաժարեալն և երթեալ և վախճանեալ 'ի Հռովմ, 'ի խոր ծերութեան ամաց 92։ — Գրիգոր Գ, Կեսարացին, յիշէ 'ի գիրս՝ և երկամաւ յառաջ քան զմեր նշանակեալ Թուականն, այն է՝ յամի 1725։

— Վասն վիճակաց կաթողիկոսութեան Սսոյ՝ աւանդէ ժամանակագիրն, զի յամբառնալ Կարապետի յաթոռն, երթեալ յԵգիպտոս առ սուլտանն (Տահիր Զաքմաք), խնդրեալ և հաստատեալ իցէ ունել իշխանութիւն 'ի վերայ ամենայն Հայոց՝ որ ընդ նորին իշխանութեամբ. և զի յայնժամ «Սեբաստիա իւր Թեմովն, այսինքն իւր » այալէթովն, Մարայ սուլթանին էր, վասն որոյ եղև » Թեմ և վիճակ Սսայ, և այժմ Սեբաստիա՝ Էջմիածնայ » Թեմ եղև. սակայն այալաթն, այսինքն՝ Կիւրին, Տա» րանտայ, Աշտի, Աղ-տաղ՝ որ այժմ Պօզուխ ասի, և » Զունդուրու հողն, սոքա Սսայ վիճակ են, Նուիրակ և » առաջնորդ նոցա 'ի Սսայ կու գան»։

219. Աջպանք. — Ժամանակագիրս մեր չտայ ինչ հաւաստիս կարծեաց Եփրեմայ կաթողիկոսի, զՅովհաննէ եպիսկոպոսէ, և այլն. այլ զայլ ոմն ցուցանէ առաջին Աջպան 'ի կէս ԺԵ դարու. յորժամ անյայտ եղև կամ գողացաւ Աջ Լուսաւորչին՝ 'ի հաստատել արևելեան կաթողիկոսութեանն Էջմիածնի (1441), «Կիլիկեցիքն չատ » նեղութիւն հասուցին կաթողիկոսին (իւրեանց), և ա» ռին զերեք աջն 'ի կաթողիկոսէն, զՍեղբեստրոսին, » զՆիկողայոսին և զՊարսամայն, և զՎանակայ (Վան-

[1] Թուի զբերդն կամ զկենդրոն Սսոյ, որ և կենդրոն էր աշխարհին, յանուն սորին Կէնլէիտ ոչջունել։ Նոյնպէս և այլուր ժամանակագիրս մեր առանձնացուցանէ կամ ամփոփէ զԿիլիկիա, առելով ընդ մէջ Նորին և Անաւարզայ լինել զխորձորն։

» կոյ) սուրբ Նշանն. և տուին 'ի խազենց Հեթում Սպիտակ, որ յետոյ քահանայ եղև. (և 'ի ժամանակի արշաւանաց Շահ-Սուարի 'ի Սիս, յամի 1468) Աջպանն էառ զաջերն և տարաւ 'ի Կոպիտառայ. քանզի երկեաւ' գուցէ անկանիցի 'ի ձեռս բռնաւորին »: Յետ մեկնելոյ սորա' Աջպան Սպիտակ երէցն դարձոյց զսրբութիւնսն յաթոռն. այլ ինքն 'ի միւսում ամի (1469 կամ 1470) մեռաւ 'ի մահտարաժամէ, 'ի Սիս: Յետ սորա ոչ յիշէ զայլ Աջպան' մինչև 'ի սկիզբն ԺԷ դարու, յաւուրս ապստամբութեան Սատուրճի անուանելոյն, որոյ հրոսք կողոպտեցին և զպասս եկեղեցեաց. «Իսկ զպարծանք պարծանաց մերոց' զսուրբ Աջերն' հետ Սուրբ Լուսաւորչին և այլ սրբութեամբն, ժողովուրդքն Սսոյ յանձնեցին զնոսա առն միոյ բարեպաշտի Մինաս անուն, հետ իւր հօրեղբօրն որդւոյն' Տէր Ղազար քահանային, որ էր Լուսարար սուրբ Աջերոյն. զոր մեծաւ հնարիւք և իմաստութեամբ թողեալ զամենայն ինչս իւր մարմնականս, առեալ զգանձս աստուածային' փախստեամբ եբեր 'ի յԱտանայ ». ուստի դարձոյց 'ի Սիս նորընծայ կաթողիկոսն Յովհաննէս Անթապցի' մեծահանդէս շքով և ուղէկցութեամբ եպիսկոպոսացն Ատանոյ, Հաճնոյ և Զեթունի, և բազմութեամբ ուխտաւոր ժողովրդոց:

222-3. *Եկեղեցիք Սսոյ*. — Զգլխաւոր և զՍ. եկեղեցւոյն' զհաստատուած շինուածոյն, ընթերցաք 'ի վեր անդր (538) ըստ բանից Ժամանակագրին, որ յիշէ և անգամ ուրեմն յամի 1642 'ի սասանութենէ կործանեալ զերկոսին սիւնս նորին: Իսկ վասն երկրորդի մեծի եկեղեցւոյն ասէ. «Արքային Հեթմոյ հայրն Կոստանդին' նմանապէս շինեաց զապաշէնն զՍուրբն Սոփի, և զարդարեաց զնա գոյնզգոյն երանգօք, 'ի պայծառութիւն տեսողացն. և 'ի յաւագանին կողմն' 'ի դրուց արձան կանգնեաց, և զանգակ 'ի նմա. և զյիշատակարան եկեղեցւոյն' 'ի դրուց կողմանէ' որ հայի 'ի հարաւ' գրեալ, զոր ոչ կարդացաք լաւապէս. քանզի սկիզբն' յարևոյ կերեալ է, մասն ինչ 'ի մէջ պատի առեալ են. զի առաջի հարաւոյ դրան եղեալ չէնքն, ասեն, թէ Յոյնք շինեալ են առ նախանձու, զի զյիշատակարանն ծածկեսցեն. սակայն անհաւաստի թուի ինձ. զի այնուհետև Հոռոմ ոչ տիրեաց. և զոր կարացաք ընթեռնուլ' այս է. զանուն Հեթմոյ թագաւորին և զՊայլ Կոստանդնին, և զանուն Կոստանդին կաթողիկոսին և Զապել դշխոյհոյն, և զթուականն Հայոց... և եկեղեցին այժմ աւերակ է, քանզի տաճարին վերայ փլեալ է, բաց 'ի խորանացն հնգից. և անունն Զանկլիխ կոչեն, վասն Զանկապուրձին. և ապականեալ է մարդով և անասնով այժմ. և զի յորժամ առին զնա մահմէտականքն' զհարաւային Բաժականնին պատուհանն մեհրապ արարեալ նամազ կարդացեալ են »: — Զմիւս հին եկեղեցին Ս. Մարիանէ շինեալ է դշխոյն Զապել. «և պատճառն, քանզի յաւուր միում մինչ գայր 'ի Բաղանեացն, և եհաս 'ի տեղի նոյն եկեղեցւոյն, յանկարծակի իբր 'ի դիւէ հարեալ' անկաւ, և կոչեաց, թէ Օգնեա ինձ Սուրբ Մարինէ. և յորժամ եղ անմխաս, ետ շինել 'ի տեղին եկեղեցի' յանուն Սրբոյ Մարինեայ. և կայ 'ի դրան վերայ կերպն Մարինէի և միշապն, և թուական եկեղեցւոյն, որ կոչի այժմ յանուն կուսին: Եւ կացոյց անդ քահանայ, որ որդւոց յորդիս եհաս մինչև ցՏէր Սարգիս, որ վախճանեցաւ 'ի ՌՁԳ Հայոց (1634-5), որ է ութերորդն, և էանց ցեղն, որ կոչի Սռնափնկանց եկեղեցին »: — Զեկեղեցւոյն Ս. Յակոբայ գտաւ յիշատակ 'ի 1270 ամէ, յորում գրեալ է անդ աւետարան մի:

Բաց 'ի 16 եկեղեցեաց' զորոց յիշատակս կարգեալ էաք 'ի Տեղագրութեանս, գտաք յետոյ և յայլ յիշատակարանաց և 'ի Ժամանակագրէն' այլս ևս. (ԺԷ) մի 'ի հնագունից և նախ քան զՍ. Մարիանէ, շինեալ 'ի Զապել դշխոյէ, որոյ և դիրքն նշանակի, «'ի հարաւ' հայի յէջմիածին, և ընդ արևելս' 'ի Ս. Սոֆի, 'ի վերայ ճանապարհին, 'ի Բարձր քարին, փոքր կաթուղիկէ. և 'ի վերն 'ի վերայ դուպային (զմբէթին), 'ի ներքուստ կողմանէ գիր գրեալ. զոր ոչ կարդացաք, թէպէտ փոյթ եղև, քանզի բարձր է. և յուսացեալ թողաք. և կէս գրոյն սևացեալ էր, և այժմ 'ի շարժէ փլեալ աւերեցաւ, և կոչի տեղին Թագուհւոյ եկեղեցի »: — ԺԸ եկեղեցի (գուցէ նոյն ընդ Ժին), կոչի Երեքխորանն Ս. Աստուածածին, ուր առէպ յաղօթս կայր Կարապետ' Տիվանպաշի թագաւորին Օշնի և որդւոյ նորին Դ Լեւոնի. և եդ անդ զոսկիապատ աւետարանն' զոր գրել և կազմել տուեալ էր 'ի Պերուճիա քաղաքի Իտալիոյ (520), հանդերձ այլովք սպասուք, յորոց միայն աւետարանն այն և խաչ մի մնացեալ էր յաւուրս գրութեան աւանդողին մեզ զայսոսիկ, որ և սպասաւոր էր եկեղեցւոյն: — ԺԹ. Ս. Լուսաւորիչ. յորոյ սրբատան յիշի պահեալ խաչի Յակոբայ Բ կաթողիկոսի, զոր դշխոյն Մարիւն' մայր Բ Կոստանդեայ պարգևեալ էր Կոստանդնի Դ կաթողիկոսի: — Ի. Ս. Վլասի, շինեալ 'ի Մեծէն Լևոնէ, հանգոյն յոլովից աւերակ մնացեալ յաւուրս յիշողին, 'ի կէս ԺԷ դարու: — ԻԱ. Ս. Դաւիթ Աստուածահայր, յորում յիշի աւետարան գրեալ յամի 1291 արդեամբք Միխայելի ուրումն, «'ի վայելումն հոգևոր որդւոյն իւրոյ Կարապետին, սուրբ և ընտրեալ տաքինասէր քահանային». յետ ժամանակաց 'ի գրաւի եղեալ էր աւետարանն, և թափեալ 'ի Սմբատ երիցուէ և 'ի ժողովրդենէն 200 բազւորին դրամով դարձուցաւ 'ի նոյն եկեղեցի: — ԻԲ. Ս. Յովհաննէս եկեղեցի կամ մատուռն, յորում պահէին չորեքին Աջքն յետ կոյս ԺԶ դարու: — ԻԳ. Եկեղեցի մի կաթողիկէ կանգնեալ 'ի Վասակայ (կամ Վասլէ) որդւոյ մեծին Կոստանդնի Պայլի, որ վկայի յոյժ ողորմած գոլ և նուիրող սպասուց սրբութեան բազում նկարօք, զգեստուք և աւետարանօք, և այլովք նմանեօք:

Հուսկ եկեղեցեաց կարգեալ էր 'ի Տեղագրութեանս Ս. Աննա, և իբր աթոռ կաթողիկոսաց վերանորոգեալ 'ի Կարապետէ կաթողիկոսէ' յամի 1448. բայց իբր 30 ամօք յառաջ քան զնա վկայի 'ի Ժամանակագրէն, Պօղոսի կաթողիկոսի տեսեալ, «զի ոչ գոյր վանք և տեղի հանգստեան կաթողիկոսին. քանզի յորժամ գային յիւրաքանչիւր աշխարհաց եպիսկոպոսք և աբեղայք և ոչ գտանէին տեղիք, 'ի փողոց քաղաքին և 'ի դրունս աշխարհականաց դեգերէին... զի ոչ ունէին կաթողի-

» կուքն տունս և սեղանս հասարակաց, և ոչ սպասաւորս՝ եպիսկոպոսունս և աբեղայս, և ոչ ժամատեղս պայծառս և հրաշալիս, զոր վայել է եպիսկոպոսապետին... 'ի մեծի տարակուսի լեալ, և ընկալեալ 'ի տուէ և 'ի գիշերի ջանիւ և չարչարանօք, ձեռն 'ի գործ արկեալ շինեաց զվանս 'ի Սիս, գեղեցկայարմար յօրինուածովք, 'ի տեղի ինչ պատուական և վայելուչ, որ Սուրբ Աննա կոչիւր. զարդարեալ ամուր շինուածով, վիմօք և աշտարակօք: Եւ սահմանեաց տունս հասարակաց միաբան եղբարց. և ապա բերեալ յարևելից քերթողածաղիկ փիլիսոփայք և անձինք ճգնազգեացք, աբեղայս և կրօնաւորս, և զարդարեաց նոքօք զվանս իւր՝ զոր շինեաց, պայծառ ժամատեղօք, և գեղեցիկ կարգօք և սահմանիւք, զոր տեսեալ էր յարևելս 'ի հայրենի ժառանգութիւն իւր:... (Ապա գնայ յԵրուսաղէմ) ընդ իւր ունելով զհոգևոր որդին՝ զՄատթէոս վարդապետն. հասեալ և արտ զուխտն. և ետ գրել զՅայսմաւուրքն յԵրուսաղէմ՝ ձեռամբ աբեղային Յովանէսին, և զՏարոյգիրքն՝ Սամուէլի Եղրեկացոյն, 'ի ՊՀԱ թվին (1422-3), և եբեր յիշատակ Ս. Լուսաւորչին և վանահայ Ս. Նշանին. զոր այժմ չկայ 'ի մեռն Լուսաւորչին: Եւ յիշատակ նորա կայ մինչև ցայս օր 'ի վերայ մեծ դրան վանիցն՝ որ հայի 'ի հիւսիս, 'ի վերայ ճերմակ մարմարի, որ է այս.

**Թվին Հայոց ՊՀԲ. Կատարեցաւ վանքս ծախիւք Պօղոս կաթողիկոսի. որոյ ողորմեսցի Քս Ած մեր. ամէն »:**

Բազում անգամ յիշեալ Նուիրակն Լէոնարտոյ՝ որ յամի 1586 յայց եղ Սսոյ, 12 եկեղեցիս և մատրունս ասէ տակաւին լինել 'ի նմին, զատ յերկոցուն գլխաւորացն, 'ի Ս. Փրկչէ և Ս. Սոփիայ. Ս. Փրկիչն է անշուշտ Ա. եկեղեցին (Էջմիածին) յիշեալ 'ի մէնջ: Յետ սակաւ ամաց նոյնպէս 14 եկեղեցիս գոլ 'ի Սիս վկայէ և Ազարիա Ֆրիտոն արքեպիսկոպոս Միաբանող Հայոց գաւառին Նախճաւանու, բայց զերկուսն՝ Ասորւոց: Զերկոսին զայնոսիկ գլխաւոր եկեղեցիս (Ս. Փրկիչ և Ս. Սոփիա) հաստակառոյցս, բարձրաբերձս և բերդանմանս ետես Նուիրակն, և դիւրաւ նորոգելիս, սակայն առ ակնածութեան՝ ոչ արկանէին ձեռն 'ի նորոգութիւն: Յիշէ նա և զաւերակս ապարանից թագաւորին և թագուհւոյն[1].

Տայ ծանօթութիւն և զեկեղեցական վիճակէ կաթողիկոսին Սսոյ, որոյ էին 24 թեմք արքեպիսկոպոսականք և եպիսկոպոսականք, իբրև 20 վանորայք, 100 միանձունք, 300 քահանայք, սարկաւագք և դպիրք բազումք: Սպասք եկեղեցւոյ, աւետարանք և այլ սուրբ գիրք բազում, այլ Աստուածաշունչ մատեանք սակաւ. և զայս ամենայն խնամով պահէին քահանայք ընտրեալք 'ի ժողովրդենէ: Զկաթողիկոսն ընտրէին 12 եպիսկոպոսունք մերձաւորք աթոռոյն. բայց երբեմն գլխաւորք ժողովրդեանն՝ արքունուստ խնդրէին զոր կամէին և ապա առնուին ղհաւանութիւն եպիսկոպոսաց. և երբեմն կաթողիկոսն ծերացեալ ընտրէր իւր փոխանորդ՝ իրաւամբք յաջորդութեան. որպէս յայնմ ժամանակի ծերունին Խաչատուր ընտրեալ էր զԱզարիա, առաջնորդ կարգելով Ս. Սոփիայ եկեղեցւոյ. և յետ մահուանն իսկոյն ընդունելի եղև յաթոռն: Ընդ վիճակս կաթողիկոսին Սսոյ համարի և զարքեպիսկոպոսն Երուսաղեմի, զորոյ աթոռ ունէր յայնժամ Դաւիթ, մի 'ի չորից կամ հնգից հռչակելոցն գիտութեամբ յընդհանուր յայնմ կաթողիկոսութեան: (Միւս չորեքին գիտնականքն էին՝ ինքն կաթողիկոսն Ազարիա, Պետրոս վ. Կարկառեցի, (Pietro Morabitto di Gargar), Յովհաննէս եպիսկոպոս Զեթունի, և Տիրատուր վ. Տիվրիկի առաջնորդն:

Սահմանք Սսոյ. — Ի յիշատակի արշաւանաց կողմնակալին Տարսոնի՝ 'ի Սիս, յաւուրս վերջնոյ Կոստանդնի թագաւորի (1368-9), նշանակին 'ի ժամանակագրէն տեղիք ինչ բնականք՝ մերձաւորք 'ի Սիս, որոց անուանք թերևս լսիցին և ցայսօր, և մարթ իցէ Սսեցւոց ստուգել և հաւաստել մեզ զբանս պատմչին. որ ասէ վասն կողմնակալին՝ թողեալ 'ի վերայ գետոյն Մախթայ զվրանս իւր և զկահս, «էառ զզօրքն իւր և եկն դէպ 'ի Շապլը-
» խ՝ րունի քարն, և երեկ դէպ 'ի Կըրտունալին քարքիթն, որ այժմ Պլցոնց ածուք կոչի, ու Պալենց ածուքն՝ Շապլխերն սահա? և մինչ 'ի չռորն որ Թուրքն այժմ Մուսալլայ-դույուսի ասեն... (Հայք վանեն զնա) մինչ 'ի Գումպէթվորն, որ այժմ Խլիճայ կոչէ Թուրքն, յորմէ ջերմ ջուր բղխի, և 'ի Շապլխերուն քարմէջն, որ քարերուն առաջեն ճանապարհ անցանի, և Կրունկլին քարքիրն, Սահաթու գեղն, որ իջանէ 'ի դաշտն, և 'ի դիմաց Ս. Թորոսի՝ իջան յայն բլրէն... և զՄանչկին զօրած տղայն թաղեցին 'ի յայն բլուրն, և զայլ զօրս զոր կոտորեցին. և այժմ թեքիէ է Տաճկաց, և կոչի Զօմախ-տէտէ »: — Ի տեղեացդ այդոցիկ որք առապարք և քարքարուտք յայտնին, Շապլխերու քարինքն՝ տան գուշակել հանս և կտուրս Պաղլեղի:

**225.** Պրոքարտ ուղևոր 'ի Սիս. — Ուղղագոյն ևս կոչի սա Պուրքարտ 'ի Սիոն լեռնէ, (Burchard de Monte Sion), զի վանական էր կամ կայր 'ի վանս լերին Սիոնի, և գրեաց զտեղեաց Սրբոյ երկրին (*Descriptio Terroe Sanctae*). առ Բ Լևոնիւ յամի 1283 կամ 1284 եկեալ եկաց յարքունիս նորա. ուր՝ ասէ տեսեալ զնա բազում անգամ անդրանկաւն հանդերձ (Հեթում Բ) և իշխանօքն նստեալ առ ոտս կաթողիկոսին, լսել խրատս. և զքառասներորդսն պահել հացիւ և ջրով, և միայն 'ի տօնի Աւետեաց լուծանել ձկամբ և գինեաւ, և այն հրամանաւ նորին կաթողիկոսի:

**226.** Կոստանդին Գ. Թագաւոր, Լիպարիտ, և այլն: — Պատմիչք և յիշատակք՝ որդի Պարոն Հեթմոյ Զամբրո-

1 Nella città di Sis, dove siede questo Patriarca, si è il Castello che era del Re d' Armenia, ed è inespugnabile, benchè stia disabitato: si veggono ancora le rovine del palazzo del Re e della Regina, ed ancora appresso il detto palazzo vi sono due chiese grandi, una del *Salvatore*, quale dicono che era la Chiesa del Re, e l' altra di *S. Sofia*, che è la patriarcale: e con poca spesa si potriano accomodare, ma non ardiscono acconciarle, perchè le sarebbero tolte dal turco, essendo alte e fatte in modo di fortezza. — Leonardo di Sidonia, *Relazione*, ecc.

լայի ասեն զԿոստանդին Գ. Տարտէլ փռանկ՝ միայն յօտար տոհմէ և բանաւոր ասէ և ոչ 'ի բուն արքայազանց. այլ ոչ ոք յիշէ զցեղն, զոր ես կարծեմ զՆղիրցին, զի նա էր ջամբռլայ յաւուրս Լեւոնի Գ. իսկ սորա (Լեւոնի) թոռն լինել, ըստ այլում աւանդութեան, անընդունակ է. զի Լեւոն 'ի մեռանելն թողեալ էր մանկիկ մի երախայ Հերում անուն, որոյ գրեաթէ անմարթ է ունել չափահաս որդի՝ թագաւորութեան թեկնածու՝ յամի 1364 կամ 1367. այն զի եթէ թոռն էր Լեւոնի՝ ոչ օտար ոք էր՝ այլ իրաւամբ ժառանգ, և ոչ յառաջ քան զնա անկ էր Բ Կոստանդնի թագաւորել, այլ մանաւանդ Հեթմոյ՝ որդւոյ Դ Լեւոնի. որ՝ զի չիք այլ յիշատակ՝ յայտ լինի վաղամեռիկ եղեալ յետ մահուան հօրն: Բայց եթէ այլազգ իմանալի է զբռնն, ոչ գիտեմ: — Շփոթք են և յանձինս՝ որ 'ի դէպս պատերազմաց առ սովին Գ Կոստանդեաւ յիշին: Ժամանակագիրն Կիլիկիոյ ծանուցանէ զի Լիպարիտ Քաջն մարաջախտ՝ որդի է Թորոսի աւագ մարաջախտի, և կրսեր եղբայր Վասլի, զի սա էր աւագ մարաջախտ՝ 'ի ժամանակի չահատակութեանն և նահատակութեան, առ որովք կայր և այլ ոմն մարաջախտ Օշին անուն եղբայր Թորոսի և հայր Վասլի. յորոց յայտ լինի՝ զի սովորութիւն էր 'ի ժամանակին՝ մարաջախտ կոչել զզօրապետս: Իսկ զօրավարն թշնամի՝ որ կոչի Շահար-օղլի՝ ըստ տոհմին, և յատուկ անուամբ Մանչակ կամ Միչաք[1] սուլտան, ըստ Ժամանակագրին՝ էր ամիրայ Տարսոնի, այսինքն կուսակալ՝ 'ի ձեռանէ սուլտանին Եգիպտոսի. և զառաջինն (յամի 1368) եկն 'ի վերայ Սսոյ բիւրու զօրաց, այլ դաւանօք իբրև զբօսանաց աղագաւ ասէր՝ «Գամ առաջի քաղաքին 'ի ֆառձ, » վասն տեսանելոյ զքաղաքն », վասն որոյ և թողեալ զբանակն 'ի վերայ գետոյն Մախրայ (531), առեալ էր զընտիր ընտիր զօրականին, յորս 400 հեծեալք զրահաւորք, և 800 ոմբաւորք. այլ քաղաքացեացն 'ի վերայ հասեալ խաբէութեանն՝ խրախուսեցին այր զընկեր և խրախուսեցան 'ի թագաւորէն յանուն Քրիստոսի և Ս. Լուսաւորչին. մինչև « մի ոմն յիշխանաց թագաւորին, որ էր » իւր յոյժ սիրելի և մտերիմ և խոհեմ, որ էր աւագ չա» ւուշ (486), Պարոն Կոստանդին Բագիքարկցի?[2], » որ 'ի բազում աւուրց հիւանդ կայր անկողնով, դժուա» րին ցաւօք, և դեռ չեւ էր լաւացեալ 'ի չկարօտութե» նէն?, վասն այս պատահմանն՝ զետ առողջ քաջասիրտ » մարդ, և վասն բարի թագաւորին սրտին համար՝ զմահն » 'ի յանձն էառ, և հեծեալ ընդ թագաւորին, և սպա» նաւ 'ի նոյն տեղին. և էր պատճառն՝ իւր հիւանդու» թիւնն, զի վատոյժ եղև, որ չկարաց ինքն զինքն ժողո» վել 'ի վերայ ձիոյն: Եւ մի ոմն այլ սիրական թագա» ւորին՝ որ էր իւր զօրացն չաւուշ, Սիր Թորոս Մսցի » անուն », նոյնպէս անկեալ երևի 'ի մարտին. զոր քաջութեամբ մղեալ՝ յաղթութեամբ և բազում աւարաւ դարձան Հայք. և յայնմ մարտի մեծապէս առաքինացաւ Լիպարիտ, սպանեալ և զՄանչակին գովեալ տղայն, զոր և թաղեցին 'ի վերոյիշեալ բլրին (541): Բայց յերկրորդում ամին՝ ոչ նոյնպէս խոհեմացան Հայք, յորժամ վերադարձաւ որդեկորոյս ամիրայն 'ի վրէժ, զօրաժողով լեալ 60,000 արանց. և յետ նահատակութեան Լիպարտին՝ դարձեալ երկիցս եկեալ, 'ի 11 դեկտեմբերի (1370) « այրեաց զՍիս, և նստաւ երեք օր. և 'ի նոյն » ամին եղև սղութիւն յերկրին Կիլիկեցոց՝ վասն այս» քան պատերազմաց. որ ոչ կարացին հողագործքն » սերմանել և հնձել զերիս ամս. և եղև մի մոթ ցորեան՝ » որ ունի զծանրութիւն իբրև յիսնոց լտրոց, զոր » հունտքերի կոչեն, 500 ղուրուշի »: — Յետ յիշատակի Լիպարտին՝ յարեալ էր 'ի Տեղագրութեանս (227) զՀեթմոյ և զՋարմանդխտոյ, յայտնեալ և զերկրպագութիւնս զիրաց նոցին (184), զոր և ևս առաւելու՝ լռութիւն Ժամանակագրին զանուանց և զգործոց նոցին:

227. բ. Ջկուսակալն և զօրավար Աշըգ-Թիմուր, մերս տարէգիր Մաղաքիա՝ կոչէ Աշխուր:

228. Եգիպտացի կուսակալք Սսոյ, և այլն. — Յիշեալն Աք-Պուղայ՝ նոյն թուի ընդ Կիւմիշ-պուղայ՝ զոր յիշէ Ժամանակագիրն, մտեալ 'ի Սիս յամի 1394 կամ 1395, այլ ոչ և զգործս նորա. այլ թուի պակասել օրինակի գրոցս: Իսկ զսպանումն Թէոդորոսի կաթողիկոսի նշանակէ լեալ ամաւ յառաջ, ոչ յիշելով յանուանէ զգլխաւոր սպանչացն, այլ միայն զդենն: — Յառաջ քան զայն և յետ գերութեան Լեւոնի վերջնոյ, նշանակէ հետաքննելի նմանօրինակ արկած մի ևս, եթէ, « Սպանեցին » 'ի Սիս՝ զգրոց աշակերտն զԿեչաղակ վարդապետն », անծանօթ մեզ: — Յաւելու և նոր հարուածող Սսոյ՝ զհարուածն ազգաց և աշխարհաց՝ զԼէնկթիմուր, 'ի ժամանակի արշաւանացն յԱսորիս, եկեալ և այրեալ զբերդն Սսայ և գնացեալ 'ի բաց:

Միւս ևս կարևոր դիպաց յիշատակ առնէ Ժամանակագիրն (ոչ քաջ ստուգեալ). զմեծ գաղթ Կիլիկեցւոց յայնկոյս ծովու, զոր ոմանք մինչև յափունս Իտալիոյ տանին[3]. իսկ սա ասէ, յամի 1404, « Մեծ ժողով եղև » Կիլիկեցոցն 'ի դուռն Կարապետ կաթողիկոսին, որ » վասն գալստեանն Թամազանին և այլ պատերազմաց, » ձանձրացեալք 'ի նեղութենէ, և տեսեալ զաւերումն » իւրեանց երկրին և զզօրանալն անհաւատից, անցան » յայնկոյս ծովուն, տունս Լռ (30,000), զոր անունով » գրէ (ո՞վ). թէ, երեքչաբաթի՝ գնաց Պարոն Կարա» պետն, բռան Կոստանդին թագաւորին, և չորեքշա» բաթի՝ գնաց Պարոն Ասըլպէկն. և իրիցունքն նոցա » Յովհաննէս և Վահան, Գրիգոր և Ստեփաննոս. և ոչ ոք » մնաց 'ի մեծատանց և յիշխանաց, և 'ի պարոնաց և 'ի » թագաւորի ցեղիցն, ոչ այր և ոչ կին, ոչ արու և ոչ » էգ. համայնքն իւրաքանչիւր ցեղիւ և ազգականօք կո-

[1] Ութ կամ տասն ամօք յառաջ քան զայս դէպս՝ ծանօթ է Մէնճէք Սէյֆէտտին, երբեմն կուսակալ Հալպայ և երբեմն Դամասկոսի, և յետոյ (1374) հազարապետ և իբր փոխարքայ յԵգիպտոս. այլ թէ նոյն իցէ սա և ամիրայն Տարսոնի, ոչ ունիմ ասել: Ոչ շատ ամօք յառաջ քան զնա՝ կայր և Մէնճէք-էլ-Եուսուֆի, մի յաւագ պաշտօնէից սուլտանին Եգիպտոսի: — ՎԱՅԼ. Դ.

[2] Իցէ՞ արդեօք թարգմանեալն 'ի ձեռն Բաշէրերդ, յէջ 157, եթէ Բարիքարկ (334):

[3] Ըստ այսմ Մաղաքիա Դպիր գրէ 'ի տարեթուի 1402 ամ. « Ի » սոյն ժամանակի որ յետ բառնալոյ թագաւորութեան Հայոց 'ի » Սսոյ, ժողովեցան թագաւորազունք և իշխանք և բազումք 'ի ժողո» վրդոց, մտեալ 'ի նաւ՝ գնացին 'ի Ֆռանկստան »:

» չեցին (չունեցին)։ Եւ յետ երթալոյն իշխանացն և մե֊
» ծատանցն, 'ի Սիս մնացեալ աղքատք և չքաւորք՝ որ ոչ
» ունէին զկարողութիւն փախչելոյ՝ ետուն զՍիս, յու֊
» նիսի վեց »։ Անուանք պարոնայցն և երիցանց, աւուրց
եօթնեկի և ամսոյ՝ տան գուշակել հաւաստարիմ աղբիւր՝
յորմէ հաւաքեալ է զդէպքս հեղինակ ժամանակագրու֊
թեանս. և յաւէտ հետաքննելի մնայ 'ի նմին՝ անձն Պր.
Կարապետի արքայթոռին։ Բայց առաւել յերկբայս
հարկանէ միւս ևս աւանդութիւն նորին՝ յայլմէ աղբե֊
րէ, որ յամի 1423–4 « վերջ տայ թագաւորութեան Կի֊
» լիկեցոց. թագաւորեացասէ Կոստանդին 48 ամ …
» և ասեն թէ թագաւորն 'ի Կիպրոս անցաւ, և ընդ
» նոսին (նմին) բազում իշխանք, իւրաքանչիւր տոհմա֊
» կանօքն հանդերձ. զի եկն 'ի վերայ նոցա Սուլթանն
» Եգիպտոսի Մուզէֆէրն [1], և ոչ կարացին զդէմ ունել.
» վասն որոյ 30,000 տուն անցան յայնկոյս ծովուն,
» որպէս 'ի վերագոյն գրեցաք։... Եւ եղեն 'ի Մեծ
» Լեւոնէ մինչև 'ի սոյն թիւն՝ ամք 226, և թագաւորք
» 13»։ Հաւանագոյն և դիպողագոյն երևի գաղութ
Հայոց 'ի Կիպրոս. թուականքն՝ ճշգրիտ են, զի յ'ամէ
թագաւորութեան մեծին Լեւոնի ցայս թուական (1424)
լինին ստոյգ 226 ամք. նոյնպէս և սկիզբն 48 ամաց ըն֊
ծայելոց Կոստանդնի՝ ժամանէ յամն գերութեան Լե֊
ւոնի վերջնոյ. զթիւ թագաւորացն ևս մարթ է ստոյգ 13
հաշուել [2]. այլ երկբայելի յոյժ մնայ ինքն Կոստանդին եր֊
կարամեայ թագաւորն այն թաքուն. քան զոր հաւա֊
նագոյն դատի յառաջնոյն աւանդեալն՝ թոռն Կոստանդ֊
նի (Կարապետն)։ Թէպէտև չիցէ անհաւան՝ եթէ յետ
գերութեան Ե Լեւոնի՝ Կոստանդին ոմն համարեալ ի֊
ցէ յանձնէ կամ յայլոց ևս՝ ժառանգ կամ թեկնածու
թագին Հայոց՝ 'ի Կիլիկիա, որպէս Լուզինեանքն 'ի
Կիպրոս, և յետոյ խաբեբայք յուկամ յուպէտ։

Ի ճահ վարկանիմ աստանօր կարգել զշար թագաւո֊
րաց Սիսուանայ՝ յաջորդաց Լեւոնի, յորոց թիւ՝ ոչ միա֊
բանին ժամանակագիրք և գաւազանք, ոմանց խառնելով
և ոմանց ոչ՝ զթագապահսն և զթագաւորս։ Մթին է
տակաւին և ժամանակն և պատճառք և եղանակ թագա֊
ւորութեան յաջորդաց Լեւոնի Գ, որպէս և մահուան
կամ սպանման նոցին։ Արդ որ ինչ ծանօթ է մեզ և կա֊
րևոր 'ի գիտութիւն, հանդերձ ազգաւ և խնամութեամբ
նոցին, այս է, իւրաքանչիւր թուականօք։

1221. Ֆիլիպ Անտիոքացի, ընդ Զապելի պսա֊
կեալ. † 1225։

1226. Հեթում Ա, որդի Կոստանդնի Պայլի, պսակեալ
ընդ Զապելի. † 1270, հոկտ. 28։

1271. Լեւոն Բ, որդի Հեթմոյ. որոյ կին՝ Կիռ՝ Աննա
(Կեռան) դուստր է Հեթմոյ Լամբրունեցւոյ. † 1289,
փեբր. 6։

1289. Հեթում Բ, որդի Լեւոնի Բ, անթագ միաբե֊
տէ. † 1307, նոյեմբ. 17։

1293. Թորոս թագապահ, եղբայր Հեթմոյ, որդի Բ
Լեւոնի. † 1298։ Սորա կինն է Մարգարիտ դուստր Հիւկ
թագաւորի Կիպրոսի։

1296. Սմբատ, որդի Բ Լեւոնի. կին՝ Զապել դուստր
Կիւյ կոմսի Յոպպէի։

1298. Կոստանդին Ա թագապահ որդի Բ Լեւոնի։

1301. Լեւոն Գ, որդի Թորոսի որդւոյ Բ Լեւոնի.
† 1307, նոյեմբ. 17։ Կին՝ Ագնէս դուստր Զապլոնի հօր֊
քեռ իւրոյ։

1308. Օշին, որդի Բ Լեւոնի. † 1320, յուլ. 20։ Առա֊
ջին կին՝ Զապել Բ, դուստր Հեթմոյ Պատմչի († 1311,
մայիս). երկրորդ կին՝ Յովհաննա, դուստր Փիլիպպոսի իշ֊
խանի Տարենտայ, կայսր անուանելոյ Արևելից։

1320. Լեւոն Դ, որդի Օշնի և Զապելի. † 1342, օգոստ.
28։ Կին առաջին՝ Զապել, դուստր Օշնի Պայլի. երկրորդ՝
Եղէոնորա կամ Կոստանդիա, դուստր Փրետրիկայ թա֊
գաւորի Սիկիլիոյ, այրի մնացեալ յԵնրիկոսէ թագաւո֊
րէ Կիպրոսի։

1342. Ճուան թագապահ, որդի Զապլոնի դստեր Բ
Լեւոնի և Ամաւրեայ արքայեղբօր Կիպրոսի։

1342. Կի կամ Կիտ, երէց եղբայր Ճուանի. † 1344,
նոյեմբ. 17։ Կին Ա. Ա. դուստր Սիր Կիանի յոյն իշխանի։

[1] Ոչ յայս անուն կոչի սուլտան ժամանակին. այլ թերևս մի 'ի մականուանց նորին իցէ և այս։

[2] Ժամանակագիրն Կիլիկիոյ՝ որ ոչ համարի ընդ թագաւորս զերեսին եղբարս Հեթմոյ և Օշնի՝ զԹորոս, զՍմբատ և զԿոստանդին, յետ մահուան Դ Լեւոնի, ասէ, « Թագաւորեցուցին 'ի նոյն ամէ « զԿոստանդին զորդի մարաջախտին իւր զՊաղտընին », և այլն. չփութելով ընդ Լուզինեանն Կիտի (*), թէ ոչ զանունն՝ այլ զժամանակ թագաւորութեանն. զի երկուս ամս ասէ թագաւորեալ, որպէս և Կիտն, և սպանեալ « վասն անպայ կեշտ վարուց իւրոց », ընդ եղբօր իւրոյ Պեմընդի, որպէս կոչէր արդարև եղբայր Կիտի սպանեալ ընդ նմին. և ապա յարէ. « Եւ թագաւորեցուցին զՆ—ս Կոստանդին՝ յայլ֊ » մէ ցեղէ, 'ի ՉՂԳ Հայոց (թուին). և բարձաւ թագաւորութիւն 'ի » տանէն Լեւոնի և Հեթմոյ, զկնի 150 ամի թագաւորութեան Լեւոնի » Առաջնոյ. և թագաւորք իննն, որ են այսոքիկ. Լեւոն. փեսայն Ֆի֊ » լիպ. դարձեալ փեսայն Լեւոնի Հեթում. որդին Լեւոն. որդին Հե֊ » թում. փոքր Լեւոն որդին Թորոսի. Օշին՝ Լեւոնի Բ՝ որդի. որդին Լե֊ » ւոն Դ. զկնի՝ ազգական նոցա Կոստանդին. և ապա Կոստանդին յայլմէ ազգէ »։ — Վասն սորա ասէ, 'ի թուին ՊԵ (1356—7) « Եղև » մահապարտ 'ի Սիս, և մեռաւ Կոստանդին թագաւորն յետ 12 » ամի տիրելոյն, և թաղեցաւ 'ի Սիս. (մեռան) և իւր որդիքն.... Եւ » եդին թագաւոր զՊարոն Հեթմոյ որդին զմիւս Կոստանդին, 'ի » ՊԺԳ (1364—5), որ ոչ մնաց իւր ցեղ »։ Սյսպէս պարապ թողլով զմիջոց ութ ամաց (ՊԵ—ՊԺԳ), յետոյ ասէ, առանց յիշելոյ զմահն, 'ի ՊԻԲ թվին (1373) « Ցետ իննն ամի թագաւորութեան » Բ Կոստանդեայ թագաւորին (ինքն երիս յիշեաց Կոստանդինս) » որդւոյ Հեթմոյ, թագաւորէ որդին ! Լեւոն. սա Ե Լեւոնն է, և Իւ֊ » լուսոսնէլոսըլ թագաւորն Սսայ։ Յետ ութն ամիսն սորա 'ի ՊԻԳ » (1374—5)... Մէլէք Զէրքէզ Պէրխուխն (յետոյ սուլտան Եգիպ֊ » տոսի) եկն 'ի վերայ թագաւորին Լեւոնի 'ի Սիս. և էառ զքաղաքն » և այրեաց. և գերեաց զԼեւոն թագաւորն թագուհեաւն և որդօքն » իւրովք յԵգիպտոս. և արձակաւ նեստն յարենէ, և սուրն կերաւ մի » յարենէ վիրաւորելոց գերելոց զլխոց իշխանաց նոցա », և այլն։ Եւ յետ սակաւ տողից յարէ. « Եւ դարձեալ թագաւորէ 'ի Սիս՝ Կոս֊ » տանդին »! Զամանէ ասէ թագաւորեալ 48 ամ, և յամի 1423 անցեալ 'ի Կիպրոս, որպէս նշանակեցաք 'ի վեր անդր։ — Յայս ամենայն խառնակ բանից՝ նշանելի է, նախ, այլ և այլ աւանդութիւն զվերջին թագաւորաց, որովք վարի ժամանակագիրն, առանց ընտրութեան. երկրորդ լռութիւն զԼուզինեան տոհմէ, կամ զզայազատաց իգական շառաւեղի Հեթմեանց. և երրորդ, զի և յետ գերութեան Լեւոնի՝ թուի՝ եթէ ոչ թագաւոր՝ այլ ազգապետ ոմն 'ի Հայոց կացեալ 'ի Սիս, մինչև ցդադրեալ բազմութեան Սսեցւոց 'ի Կիպրոս կամ այլուր։

(*) Զկիտ և զԿոստանդին չփութեալ է նախ յարայարողն ատեկցրութեանց Սամուելի, զի ասէ. « Կիտն Կոստանդին որդի Պարոն Բաղդնին, հօրեղբօրորդի Լեւոնի։ Սա էր որդի » Պարոն Հեթմոյ, թոռն Դ Լեւոնի », Վասնակ չփութ են 'ի բանից. Կիտ՝ արդարև Դ Լեւոնի հօրքեռն (Զապլոնի) որդի է. իսկ որդին Պարոն Բաղդնի՝ է Կոստանդին Բ. որ֊ դին Պր. Հեթմոյ՝ է Կոստանդին Գ. Իսկ թոռն չէք ոչ Դ և ոչ Գ Լեւոնի. այլ Կիտ՝ է արդարև թոռն Բ Լեւոնի, որդի զուլով դստեր նորին Զապլոնի, որպէս բազում անգամ նշանակեցաւ։

1345. Կոստանդին Բ, որդի Պաղտինի մարաջախտի և Մարիւնի դստեր Բ Սմբատայ գունդստապլի. † 1363. – կին՝ Մարիամ դուստր Օշնի Պայլի և Յովհաննայ այրույ Օշնի Թագաւորի։

1363–5. Շփոթք և բռնաբարութիւնք. ըստ ոմանց Լեւոն ոմն կորզէ զԹագն, այլ խոտեալ 'ի բաց մերժի[1]։ – Պեմունդ՝ անդրանիկ Ճուանի՝ հանդերձեալ երթալ 'ի Հռովմ 'ի խնդիր Թագի, † 'ի Վենետիկ, (1363, հոկտ.)։ — Ուրբանոս Ե գրէ առ Հայս (3 ապրիլ, 1365) Թագաւորեցուցանել զեղբայր նորա Լեւոն Ե։

1364–5. Կոստանդին Գ, որդի Հեթմոյ Ջամբռլայի Նղրեցւոյ[2]. սպանանի յամի 1373 (ապրիլ)։ Կին նորա Ա. Ա. դուստր է Օշնի տեառն Ogray? ըստ Տարտելի։ — Թուի առ սովաւ երկփեղկեալ իշխանութեանն. քանզի Թողու սա զհարաւակողմն աշխարհին առ օտարս, և Հայք այնր մասին հրաւիրեն զՊետրոս Ա Թագաւոր Կիպրոսի (1368), որ և մինչ հանդերձի 'ի նաւ մըտանել, սպանանի յիւրայոցն (17 յունւ. 1369)։ — Ի նմին ժամանակի և Մարիամ դշխոյ (կին Բ Կոստանդնի) Թուի Թեկն ածել Թագաւորութեան, զի առաքեալ էր դեսպանս 'ի Հռովմ, 'ի Նէապօլիս, 'ի Վենետիկ. և Գրիգոր ԺԱ Պապ Թելադրէ (22 յունու. 1372) փեսայացուցանել նմա զՈթոն իշխան Պրունզուիքայ և Թագաւորեցուցանել ։ — Յետ ըսպանման Գ Կոստանդնի՝ կարգի նոյն ինքն Մարիամ Թագապահ, 1373–4։

1374. Լեւոն Ե Լուզինեան, եղբօրորդի Կի Թագաւորի. կինն՝ Մարիամ 'ի Սուասոնեան զարմէ։

1375. ապրիլ. — Սա գերի վարի յԵգիպտացւոց. և դադարէ Թագաւորութիւն Հայոց և Սիսուանայ. ընդ նմին գերեալ և Մարեմայ դշխոյի (կնոջ Բ Կոստանդեայ) և արձակեալ երթայ յԵրուսաղէմ, և անդ վախճանի։ Իսկ միւսն Մարիամ կին Լեւոնի՝ մեռանի 'ի Գահիրէ Եգիպտոսի։

Յետ մահուան Լեւոնի՝ 'ի Բարիզ (29 Նոյեմբ. 1393), Թագաւորք Կիպրոսի՝ իբր ազգակիցք իւր և հօրեղբօրն՝ Կի Թագաւորի, յաւելուն 'ի կոչումն և 'ի դրամս իւրեանց և զանուն Թագաւորի Հայոց. և են այսպէս անուանեալ Թագաւորքն, զատ յ'Ա և յ'Բ Պետրոսէ, յամս

1375 — 1398 Յակոբ Ա.
1398 — 1432 Յանոս կամ Յովհան Ա.
1432 — 1458 Յովհան Բ.
1458 — 1460 Գառլոդդա կին Լուդվիկի Սաւոյացւոյ.
1460 — 1473 Յակոբ Բ.
1473 — 1489 Կատարինէ Գոռնարոյ, յետին անուանակիր Թագաւորութեան Հայոց։

228. Մէլիք Էօմէր. — Թուի յորդւոց յորդիս պայազատեալ տոհմի սորա 'ի Սիս, հարստահարելով զքնակիչսն. քանզի էր համանուն նորին ոմն և յամի 1461, յորում՝ « Սսայ Տաճիկքն դաղտ 'ի գիշերի գնացին առ » Կարապետ կաթողիկոսն, և նստան ժողովեցին զՍսայ » Տաճիկքն և զՀայքն. և միաբանութեամբ երդումն և » դաշինս արարին ընդ միմեանս, զի ըմբռնեսցեն » զՄէլիք Օմէրն։ Եւ 'ի » վաղիւն ամենեքեան գընացին առ հասարակ 'ի » Դարպասի նորին դուռն. » և ոմանք ամբարտաւանք » ելեալ ընդ պարիսպն՝ 'ի » պղուզ դրան վերեւն, մըտան 'ի մէջ դարպասին, » քրիստոնեայք և Տաճիկք. և Մէլիք Օմարն » ծակեաց զպարիսպն, և » էառ զԹուրքմանն 'ի » մէջ դարպասուն. և եդեալ պատերազմն՝ ձակատեցան Թուրքմանն » և Սսայ բնակիչքն. և » սպանին 'ի Թուրքմանէն մեծանուն մարդ » մի. և նոցա բարկացեալ՝ » յարձակեցան 'ի վերայ » Սսայ բնակչացն հեծելոցն. և փախստական » արարեալ սպանին երկու քրիստոնեայ, և » զայլսն նետով խոցոտեցին. և ոմանք փախըստական եղեալ՝ մտին 'ի բերդն, և ձգեցին երկու մեծ » քար ընդ պարիսպն 'ի վայր. և զայն տեսեալ Թուրքմանացն՝ դարձան յետս, և իջեալ մտին 'ի քաղաքն. և » Թալանեցին չորս տաճկի տուն, և զՊաղտօնին տղին, » զԼեւոնին և զԳրիգորին, և զայլս բազումս։ Եւ ապա » եկեալ մտին 'ի սուրբ յաթոռն՝ 'ի կաթողիկոսարանն » Տէր Կարապետ կաթողիկոսին, և թալանեցին զվանքն » և զսուրբ մեռոնն և զամենայն սրբութիւնս »։



235. Կատարինէ Գոռնարոյ
վերջին անուանեալ Թագուհի Հայոց.

[1] Զայս անուն և զդէպ յիշէ և ժամանակագիրն Աւետիք Ամդեցի. այլ կանխէ զժամանակն. զի յուլթերորդ ամի Բ Կոստանդեայ առէ (1352) « եղև Թագաւոր Լեւոն մ'այլ, խոչընդակ Կոստանդեայ, և խռովութիւն ոչ սակաւ ընդ միմեանս »։

[2] Էր որ հօրեղբօրորդի Բ Կոստանդնի առէ զերրորդս այս Կոստանդին, այլ հաւանօրէն եղբօրորդի է նորա. զի ծանօթ է եղբայր նորա Հեթում, այլ ոչ և հօրեղբայր՝ նոյնպէս Հեթում անուն։ Տես յԱզգացուցակի Հեթմեանց զտոհմն Նղրեանց։

228. բ. Շահ-Սուար Ա. — Որդի բագաւորին Գ.երմա֊
նիկոյ կոչէ զսա ժամանակագիրն. յետ նուաճելոյ զԴաշ֊
տայինն Կիլիկիա՝ (1467), եկեալ է 'ի վերայ Սսոյ, յամի
1468 ( 2 յունիսի), և հրով դատեալ զաւանն. ապա վե֊
րադարձեալ 'ի նոյն՝ պաշարէ զբերդն, յորում « Զա֊
» գամ [1] պարոնն կայր 'ի բերդն, և ութ հեղ պատե֊
» րազմ արարին. և իջան քրիստոնեայք 'ի բերդէն, և
» շատ սպանին. և շատ աղարկեցին զբերդն, և նա պա֊
» հեաց. իսկ Սսեցիքն ահռկեցան և տվին զբերդն, դեկ֊
» տեմբերի [2] իգ (23). և եդ Շահ-Սուար՝ պարոն 'ի Սիս
» զՇարաւՃրբն, և գնաց »: — Ի դիպուածի երկրորդի
ամին, 1469, պարոնն այն տեղակալ Շահ-Սուարի՝ ուբ
քրիստոնեայս կալեալ դնէ 'ի հորն, և ոչ թէ զբազմու֊
թիւնն, յորոց շատք փախեան 'ի Կոպիտառա: « Եւ Շարա֊
» ւՃնբ պարոնն Սսայ՝ արար երդում, և յղեաց մարդ 'ի
» Կոպիտառայ առ Սսցիք, և ասաց. թէ, բերէք 12,000
» ղուռուշ, որ տամ զձեր մարդիկն. և Սսցիք ոչ գիտէին
» զնորա նենգութիւնն. առին շատ ձի և մալ, և գնացին 'ի
» Սիս. և իջին 'ի բերդէն, և ըմբռնեցին զամենայն քրիս֊
» տոնեայսն և եդին 'ի հորն. և առին զմալն և զձիանքն
» և շատ ըռզակ. և սպան երեք տաճիկ: Վասն որոյ 'ի
» մնացեալ իշխանացն ոմանք գնացին 'ի Տէրէնտայու
» բերդն՝ մօտ 'ի Շահ-Սուարն. և առին 'ի նմանէ
» հրաման, և եկեալ հանեցին զդանտարկեալ քրիս֊
» տոնեայսն »:

— Ի նմին ամի՝ միւս ևս հարուած հասեալ է տարա֊
բաղդիկ քաղաքին. զի Էտիլ կոչեցեալ ֆախին առեալ
զՖարսախն ( Թուրքմանս ), և եմուտ 'ի Սսոյ « բերդն՝
» գողութեամբ, և թառաչեաց (կողոպտեաց), և շատ
» մալ էառ, և շատ անօթ որբութեանց »: — Աղխտա֊
գոյն ևս հարուած եհաս յերկրորդում ամի, « մահտա֊
» րաժամն ընդ ամենայն երկիր. և մեռան շատ կարգա֊
» ւորք և իշխանք և տանուտեարք. և 'ի Սիս՝ Աջպան Ս.
» Լուսաւորչի Աջոյն մեռաւ (Հեթում Սպիտակ երէցն
» Խազոնց). զոր 'ի նոյն ժամանակի Նաղաշ եպիսկոպոսն
» (Մկրտիչ) ասաց զՈղբն 'ի վերայ Տղայոց, որ է սկիզբն՝
» Արարիչն արարածոց . և այլ Ողբ 'ի վերայ Իշխանաց,
» որ սկիզբն է՝ Երազ է և սուտ, եղբարք, և այլն »: —
Աւերողն Սսոյ (Շահ-Սուար) երկրորդ անգամ յաղթող
գտեալ Եգիպտացւոց՝ և գերեալ զսահմանս Դամասկոսի,
ասի բերեալ 1000 տուն յայլազգեաց և բնակեցուցեալ 'ի
Սիս: Իսկ ինքն ապստամբն յետ ամաց ինչ (1473) հալա֊
ծեալ յԵգիպտացւոց և պաշարեալ 'ի Զամանդի բերդի,
անձնատուր եղև, և վարեալ 'ի Գահիրէ՝ սպանաւ:

228. բ. Սատուրճի օղլի, և այլն. — Ժամանակագիրն
հաւաստէ զ'ուստին և զժամանակ գալստեանն. « Ի ՌԽԹ
» թուին մերոյ, յաւուրս Առաջաւորաց Սրբոյն Սարգսի
» Զօրավարին, որ օր էր շաբաթ (7 փեբր. 1601), եկն
» ոմն Սատուրճի անուն բազում զօրօք Անրպոյ (յԱնթապ
» քաղաքէ), 'ի վերայ Սաւրիոյ. և սպան զպարոն տե֊
» ղւոյն հանդերձ մեծամեծօքն. և եկն 'ի Սիս, և այլն :.. Եւ
» թէպէտ շնորհքն Աստուծոյ ազատեաց անփորձ զդաս
» հաւատացելոցն 'ի չար բռնաւորէն՝ կանամբք և անմեղ
» զաւամբքն, բայց յընչից և ապրանաց և եկեղեցական
» զարդուց՝ շատ պակասութիւն եղև քաղաքիս, որք կո֊
» ղոպտեցին չար և անօրէն մարդակերպ գազանքն, նաև
» 'ի գանձուց Ս. Լուսաւորչին՝ անօթս և զարդս գեղեց֊
» կագոյնս. և բազում զարդս եկեղեցեաց գտեալ 'ի պա֊
» հարանս թագստեան՝ կողոպտեալ տարան ընդ իւ֊
» րեանց՝ չարքն այնոքիկ ». բայց սուրբ Աջքն զերծանին
ձեռամբ Մինասայ և որդւոյ նորա տէր Ղազարու:

231. Դրազարկ. — Անունն՝ գտաւ և յայլում գրուածի
(Հեթմոյ Պատմչի) գրեալ թ տառիւ՝ Թրազարկ:

232. Հանգստարանն. — Ժամանակագիր մեր յիշե֊
ցուցանէ յաւելուլ 'ի ծանօթ արքայազունս թաղեալս աս֊
տանօր՝ և զՋապել Բ դշխոյ, կին Օշնի արքայի և քոյր
Օշնի Պայլի. որ՝ յառաջն ոչ գիտեմ ո՛ւր էր թաղեալ, և
յետ իբր 28 ամաց, որդի նորա Լեւոն Դ՝ ետ փոխադրել,
« Եւ տարան 'ի Դրազարկն. զի նա էր տեղ և դիր հանգըս֊
» տեան թագաւորացն Հայոց և հայրապետաց, վասն եր֊
» կիւղին անօրինաց. զի նեղ և նուրբ է ճանապարհն. և
» 'ի Սսու՝ աւելի քան զմիոյ աւուր ճանապարհ »:

232. — Թուականք՝ մահուան Ա. Թորոսի՝ ընթեռնլի
են 1129 և ոչ 1127, և Կոստանդնի կաթողիկոսի՝ 1267:

234. — Թորոս փիլիսոփայ, որ է Երաժիշտ, թերևս
արքունի երէցն Թափրոնց մականուանեալն, գրեալ է յայ֊
սըմ ժամանակի ընտիր աւետարան մի 'ի Դրազարկ, և
յուղարկեալ յԱռաքելոց վանս 'ի Տարօն, յորմէ ընդօրի֊
նակէր յետ դարու միոյ (1454-5) այլ ոք, գտեալ զայն 'ի
Բաղէշ քաղաքի:

234. բ. փոս անապատ. — Գոյ հնագոյն յիշատակ
տեղւոյս 'ի կիսոյ ԺԳ դարու, և 'ի կաթողիկոսէն Կոս֊
տանդնէ, յաւետարանի, զորմէ ասէ. « Եսու գրել (յա֊
» մի 1254) յաղագս անձին իմոյ, յընտիր և 'ի լաւ օրի֊
» նակաց, և ոսկով և արծաթով զարդարեցի. և իմ տե֊
» սեալ զմենաստան անապատն զփոս, և միաբանեցի զիւ֊
» րեանքն 'ի մի պաշտօն և 'ի մի սեղան. և առին իւրեանց
» սահման՝ ըստ կարեաց իւրեանց. և ես միաբանեցայ
» ընդ նոսա, և պարգևեցի նոցա զաւետարանս զայս, զոր
» ինձ ստացեալ էի, յիշատակ ինձ և եղբօրորդւոյ իմոյ
» Թորոս քահանայի », և այլն:

239. Անազարբա. — Զօրավարաց եկեղեցին յայտնի
'ի կնքոյ Թորոսի՝ զոր յանդիման արարաք յէջ 442, լի֊
նել յանուն Սրբոցն Գէորգայ և Թէոդորոսի:

240. բ. Քաղրդիկ. — Եթէ ըստ իմաստին թարգմա֊
նեալ իցէ Թուրքաց զայս անուն, ապա նոյն է ընդ Պա֊
ղըրսաղ տէրեսի. յերկրին Կիլիկիոյ, ուր Յովհ. Զմնկիկ

[1] Որ Զա+ գրեալ էր երկրայութեամբ 'ի Տեղագրութեանս, զի այնպէս էր օրինակ յիշատակարանին: Ամօք ինչ յառաջ (1464) յիշի այլ ոմն Զա+ամ պէկ՝ թագաւորութեան պատուով, այլ բռնաւորու֊
թեան ցուցիւ, 'ի կողմանս Եփրատացւոց, ուր 'ի Կարկառ բերդի կալեալ զնա Քրդաց՝ սպանին:

[2] Ի Յիշատակարանին գ (երեք) գրեալ էր ամսաթիւն:

կայսր չինէ կամուրջ « 'ի վերայ գետոյն, որ կոչի Ջմշկի֊
» կի-կարմուճ, զոր այժմ Սսացիք ծեքելով Ջէշնիկիր քօ֊
փրիսի կոչեն », ըստ Ժամանակագրին։

247. Ճէպէլ-Նուր լեառն. — Ըստ ծաղկունսն յիշէ Յակոբ Նալեան, « գեղեցիկ Ջիւմպիւլներ և իպրուհիլ֊
սենաւ, որ է Լօշտակ »։

249. Մսիս. — Եկեղեցի մի և Ս. Թորոս անուն յիշի
յամի 1297, ընդ որոյ հովանեաւ Հեթում գրիչ քահանայ
գրէ Աւետարան մի « 'ի խնդրոյ աստուածազան և սրբա֊
» սէր ըստ հոգւոյ հօր մերոյ, ըստ մարմնոյ ուսուցչի մե֊
» րոյ պատուական քահանայի Սմբատայ Քաջկոնց, 'ի
» յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց, և 'ի վայելումն
» եղբօր և եղբօրորդեաց, և ամենայն նախնեաց իւ֊
» րոց »։ — Հեթում հաւանօրէն է երէցն Թուեալ ընդ
ճարտար գրիչս Սիսուանայ (517). Թերևս և նոյն զոր
'ի սարկաւագութեան իւրում տեսաք յամի 1279 գրել
զյիշատակ Լեւոնի Գ 'ի Ճաշոցն պարգեւեալ 'ի նմանէ
եկեղեցւոյ Պերուճիայ քաղաքի (519)։

250. — Կամուրջն. յամի 1243 յիշի փլեալ, այլ ոչ
որպէսն և նորոգութիւն, որ յայտ է թէ արարեալ է իս֊
կոյն հրամանաւ Հեթմոյ արքայի և արքայահօրն Կոս֊
տանդնի։ Յետ երկերիւր ամաց (1432) յանցանելն ընդ
այն Պերդրանտոնի (փառնկ ուղևորի) գետատար եղեալ
էր քարեղէն կամուրջն և փայտիւ նորոգեալ էր։

251. — Մերձ 'ի Մսիս ասէ Ժամանակագիրն զտե֊
ղին Արըխ-Եազիսի, որ է Նիհար դաշտ. և պատճառ ա֊
նուանն' զայս, ըստ աւանդութեան այլազգեաց, զի Պի֊
պարս Փնտուխտար (յետոյ սուլտան) յորժամ ծառայ գը֊
նեալ 'ի Պրուսա' տարեալ լինէր յԵգիպտոս, հիւանդ
գոլով և նիհար յոյժ, աստանօր ընկեցաւ յընկերէն 'ի
ձիոյն, զի երկու 'ի միասին հեծեալ էին։

251. — Քեաֆիր-պինա. Ըստ Յակոբայ Նալեան' Քէ֊
ֆրի-պինա, Թաղ մի է Մսսայ։

251. ա. Շահի-Մարան. — Յակոբ Նալեան' Շահ-
մէրտան գայլսի ասէ, « մօտ 'ի Մսիս է, 'ի վերայ բարձր
» լերին գագաթոջ, ողորմելի տեսողացն. որ թուի թէ Ա֊
» նարզարայ մեր անառիկ բերդն է (!). Թէպէտ յոմանց
» ասի նա 'ի ձորամէջ լեալ մօտ Ատանայի »։

253. Արքայկաղին վանք. — Վասն դրիցն' ասէ Ժա֊
մանակագիրն, « Այժմ աւերակ է, յարևմուտս Կոպիտա֊
» ռու, և անմարդաբնակ. և Կոպիտառցիքն ունին այգի
» 'ի նոյն տեղւոջ, որ նստին յամառն անդ »։ Յիշէ ևս զի
« զՊարոն Ստեփանէ (եղբայր Բ Թորոսի) Թաղեցին 'ի
» չորսն փետրվարի, 'ի սուրբ ուխտն Արքայկաղնին »։

Ի յիշատակարանի աւետարանի միոյ գրելոյ յայս վանս'
յամի 1259 կամ 60, գրողն' ընդ Թագաւորին Հեթմոյ և
կաթողիկոսին Կոստանդնի' յաւելու և « յիշխանութեան
» իշխանաց իշխանիս մերոյ Ճօֆրէ, և որդւոցն' Կոս֊
» տանդնի, Սմբատի և Աւշնի ». զխնդիք զսոսա տեարս
Սարուանդիքարի, որում' յիշատակս այս' մերձաւոր կար֊
ծեցուցանէ զվանսն։ Գրիչ աւետարանին է Սիմոն փիլի֊
սոփայ, մի 'ի նշանաւոր երաժշտաց կամ երգեցողաց ժա֊
մանակին (517)։ — Ջեկնղեցին Արքայկաղնոյ համարէի
յանուն Ս. Աստուածածնի. որում 'ի ճահ գայ և Պատ֊
կեր նորին' զոր 'ի սկիզբն ԺԲ դարու Թաթուլ իշխան Մա֊
րաշոյ' 'ի Թողուլն զքաղաքն առ Ճօսլին, վաճառեաց Թո֊
րոսի Ա « ընդ բազում ոսկւոյ.. և զՊատկեր Ս. Աստուա֊
» ծածնին բերին 'ի սուրբ ուխտն Արքակաղնին »։

260. Ատանա. — Բաւազաւն տոհմն տիրող։ Մի ոմն 'ի
պայազատացն' յառաջին կէս ԺՁ դարու, « շինեաց
» զԲերդն Ատանայու, և զկարմունձին առաջի դռանն. և
» տարեալ զՍըսայ բերդին և զպարսպին դուռքն, զմինն'
» Ատանու բերդին դուռ արար, և զմիւսն' կարմնճին.
» և շինեաց խան, ձաղի և բաղանիս և իմարաթ, և չորս
» ջաղացք 'ի վերայ ջրին, և մեծ տօղայ' որ 'ի գետոյն
» ջուր կու քաշէ, և երկու սարայ, և նարինձի պահչայ,
» որ այժմ կոչի Սօվուչխ - պախչասի, որ քաղցր լեմուն
» կայ 'ի նմա. և այլ բազում շէնքս. Շէքէրխանայ, չար֊
» սի և պազար և մասէրէ, և բազում խանուրներ, և
» պօյախանէ. և երկու լման չարսի. քանզի օձախըն ետ
» զնա Թագաւորն (Օսմանեանց)։ Եւ այլ անհամար շի֊
» նութիւն արար. որ այժմ բազումք 'ի նոցանէ
» անյայտ են »։ Այսօրիկ ըստ Ժամանակագրին։

260. Դաւիթ յԱտանա. — Եփրեմ կաթողիկոս' երե֊
ւի 'ի ժամանակագրէս Կիլիկիոյ համառօտեալ զպատ֊
մութիւն գալստեան բռնաւորին և զմարտին Ատանայ.
զորով զանց արարեալ մեր, յիշեսցուք միայն զի ոչ սոսկ
բնակիչք Ատանայ, այլ և Սսեցիք' որք յահէ Դաւթայ
եկեալ էին այսր, « 'ի բերդն մտին, և բազումք 'ի դուրս
» մնացին. նա և շատ աղաչեցին լալով զՅովհաննէս կա֊
» թողիկոսն, զի առցէ զարկղ (Աջոյ) Ս. Լուսաւորչին և
» մտցէ 'ի բերդն. և նա ոչ եմուտ, այլ ետ մուծանել զլուս֊
» արարն սրբոյ Լուսաւորչին, հանդերձ սուրբ Աջերացն
» և այլ սրբութեանց' 'ի բերդն. և ինքն կացեալ յաղօթս
» մինչ 'ի յառաջին ժամ գիշերոյն' լալագին դիմօք. զոր
» բարերարն Աստուած ողորմեցաւ, 'ի նորին խնամոցն
» բացեալ եղև Դուռն կարմունձին. և Յովհաննէս կա֊
» թողիկոսն յուսալով 'ի խնամքն Արարչին' ել աշա֊
» կերտօքն հանդերձ. և ընդ մոլար ճանապարհ լեառն֊
» լեռնայն եկեալ եհաս 'ի սուրբ աթոռն 'ի Սիս։.. Եւ
» Սսոյ ժողովուրդն յետ գնալոյ պղծոյն' դարձան և եկին
» 'ի Սիս, հանդերձ սուրբ Աջերօքն և այլ սրբութեանցն.
» և հանգուցին զսուրբ Աջերն 'ի Ս. Աննայ եկեղեցւոյն,
» որ է աթոռ և հայրապետական եկեղեցին Սսոյ »։

262. — Ի Սահմանս Ատանայ յիշի 'ի Նախնեաց, յամի
1292-3, գեօղ մի « 'ի Գահս Կիլիկիոյ որ կոչի այժմ
» Բաղնէկունք, մերձ յաստուածապահ քաղաքն Ատա֊
» նա ». զոր և վերագոյնդ յիշեցաք ( 533 )։

270. Տարսոն քաղաքի պաշարողն կամ զօրագլուխ Ի֊
կոնիացւոց' Լամաատին սահիպ կոչի 'ի Ժամանակագրէն
Կիլիկիոյ, հաւանօրէն Շամսէտտին էր անունն։

287. Կամարտիաս. — մերթ այսպէս և մերթ Կու֊
մարտիաս գրեն յիշողք տեղւոյս, այլ և ռ տառիւ. իսկ

Ներսէս Պաղոն՝ խումարտիաշ գրէ. նոյն ինքն և ըղ-
Մաղվա (288) գրէ Մամղա։

296. բ. Մանիօն բերդ. — Ժամանակագիր ոմն ասէ
համառօտիւ. 'ի Թուին « ՉԼԲ (1283) Թուրքմանք տիրե-
» ցին Մանիօնին, յետ եօԹն ամի պաշարման նորա »։
Ա՛յլ ոմն ծանուցանէ, զի առ Լեւոնիւ մեծաւ Սիր Աշտանն
էր տէր Մանիօնին։

304. Աստալիա. Գարամանն և Օսմանեանք. — Ցամի
1422, ըստ ժամանակագրին մերոյ, « սպան սուլԹան
Մուրատն Բ զՂարամանին տղան (Մուհամմէտ), որ
» եղև ասի (ապստամբ) նմա, որ գնաց սուլԹան Մուրատն 'ի
» վերայ նորա. և նա մտաւ 'ի ԷնԹէլայու բերդն, և 'ի
» ձեռն զարկին զնա Թօփով, և արարին կտոր կտոր։
» Եւ ունէր երեք որդի. և նա ետուր զՂարամանայ եր-
» կիրն՝ Իպրահիմին, մեծ որդոյն, ու երկուքին այլ՝ Հի-
» սային ու Ալայիտինի՝ 'ի դրան արքունի ուլաֆայ (ռո-
» ճիկ) արար սուլԹանն »։

314-5. Սենեքերիմայ Արծրունւոյ սերնդոց գաղթ-
ման 'ի Կիլիկիա՝ վկայէ և Ասորի պատմիչն Միխայէլ.
« Ընդ այն ժամանակս (յետ կոյս ԺԱ դարու), արքայա-
» զունքն Հայոց՝ որ յաւուրս Վասլի կայսեր եկեալ 'ի
» Վասպուրականայ... որ և զկնի ժամանակաց պակա-
» սեցան 'ի նենգուԹենէն Յունաց և տկարացան, մտին
» յերկիրն Կիլիկեցւոց, և բնակեալ ունէին բազում
» գաւառս դղեկօք և ամրոցօք »։

318-9. Կրակա կամ Կրակկա. — Ըստ նորագիւտ
յիշատակարանաց՝ առաւել ևս հաւաստի՝ որիչ լինել 'ի
ծովեզերեայն Կրագայ, և գտանիլ 'ի լեռնակողմանս միջն-
աշխարհի Կիլիկիոյ, Թէպէտ և չեղեն մեզ բաւական յի-
շատակք գրոց՝ ճշգրտել զդիրսն. այլ կարևոր են բանքն,
և կարևորագոյն իրք նշանակեալ 'ի նոսին, բնականք և
բանականք. զորս յայտ առնէ գիտնական գրիչ գործոց
Փիլոնի եբրայեցւոյ, յամի 1328, այսպէս. « Ես տկար ոգի
» և բազմամեղ անձն՝ Յակոբ, կրսերս բանասիրաց և
» յետինս վարժապետաց, 'ի քաղաքէն Կրակկայ կոչե-
» ցեալ, յորում որակ որակ գոյնս քարանց ելանէ. զոր
» ոմանք հրահալելի արուեստիւ եփեալ՝ կայծակունս արծ-
» արծեն, և յառաջ բերեն զանազան գործս երկաԹոյ,
» առ 'ի պէտս ազգի ազգի անօԹոց. Հոգւոյն ձեռնտը-
» ւուԹեամբ՝ և ըստ անձին իմոյ բաղձանաց՝ ետու գրել
» զեօԹն տառս իմաստասիրական, որ է չարագրեալ յե-
» ռամեծ իմաստասիրէն Փիլոնի։ Եղև գրաւ գրչուԹեան
» սորա 'ի վանս՝ որ կոչի Ջերմաղբիւր. և է այժմ Դա-
» սատուն կարգեալ 'ի Թագաւորէն Հայոց Չորրորդ Լե-
» ւոնի, և Թագադրին և Պայլին Հայոց Աւշնի տեառն
» Կոռիկաւսոյ. ձեռամբ Առաքելի սրբասէր և կուսակրօն
» քահանայի։.. Էր Թիւն յաբեԹական տումարի և Հայկ-
» ազեանս սեռի ՉՀԷ, 'ի Թագաւորութեանն Հայոց Դ
» Լեւոնի, որդւոյ բարեպաշտ Թագաւորին Աւշնի, և 'ի
» պայլուԹեանն Հայոց Աւշնի՝ տիրոջն Կաւռիկաւսոյ, և
» 'ի կաԹողիկոսուԹեանն Հայոց Տեառն Յակոբայ, որ է
» քուերորդի Տէր Գրիգոր կաԹողիկոսին » (Անաւար-
զեցւոյ)։ — Գունագոյն քարինքն, հրահալքն և երկա-
Թեայ անօԹքն՝ յայտ առնեն 'ի սահմանս բովուց 'ի գաւս
Կիլիկիոյ լինել Կրակկայ, զոր՝ համարձակ քաղաք կոչէ
ընիկ նորին վարժապետն այն Յակոբ։ — Մետասան ամօք
յառաջ քան զայս յիշատակ՝ քահանայ ոմն Յովհաննէս
անուն որդի Սիրունի և Կիրայի 'ի ձեռն այլոյ քահանայի՝
գրել տայ Աստուածաշունչ մատեան « Ի Գիւղաքաղաքն
որ Կրակայ կոչի,

Ձեռամբ կոստանդին քահանայի,
ԵօԹըն հարիւր Հայոց Թըւի
ՎաԹսուն եւ վեց անցեալ ամի.
Ընդ հովանեաւ Սուրբ Գրիգորի.
Ի հայրապետուԹեան Տեառն Կոստանդի,
Հայոց Մեծաց հեղինակի.
Ի Թագաւորութեան Հայոց՝ Աւշնի՝
Բարեպաշտի եւ յոյժ հեզի »։

Ահա յայտնեցաւ և եկեղեցին Կրակկայ, զոր սա գիւ-
ղաքաղաք կոչէ, մինչ չև էր հաստատեալ 'ի նմա Դասա-
տանն. համարելով զսա բարձրագոյն իմն ուսմանց տեղի՝
հաւանելի է և բարձրանալ պատուոյ շինատեղւոյն և քա-
ղաքանալն։ — Իսկ անուն վանացն Ջերմաղբիւր, զոր և
գուշակէաք (114) այսպիսի լինել զգրեալն ուրեք Գերմ-
աղբիւր, յիշեցուցանէ զմի 'ի ջերմըկաց՝ որ աստ և անդ
նշանակին 'ի Կիլիկիա, և յօժարիմ կարծել յաւէտ
զկլիճայն անուանի՝ որ առ փայտեայ կամրջաւ (134)։
Իսկ Դասատունն կարգեալ 'ի Դ Լեւոնէ՝ Թուի սկզբնա-
ւորեալ կանխագոյն ևս, եԹէ այսպէս օրէն իցէ գուշա-
կել և մեկնել զբանս այլոյ վարժապետի, որ ուԹ ամօք
յառաջ քան զՅակոբ գրէր (1320). այն ինքն է, « Ստե-
փանոսի Կրակցոյ, Բանի իմաստից սպասաւորի », որ-
պէս կոչէ զինքն, և ասէ յայնմ ամի ստացեալ զգիրս
Գէորգայ Սկեւռացւոյ Մեկնութեանն Եսայեայ, « յո-
» ղորմուԹենէ քրիստոսասէր արքային Հայոց՝ Օշնի, և 'ի
» ԹելադրուԹենէ բարեսէր..?.. Թորոս Ջաւտկայ որ-
» դւոյ Ճաւֆրի, ընդ որոյ հովանեաւն հովանաւորիմ, և
» գրկացն կալանօք գրգանամք, ես և որ ընդ իս մանն-
» կունքս են 'ի յերկս իմաստից աստուածաշունչ տառից »։

331. բ. Բերդկան բերդ։ — Ցետ Միխայլի՝ տէր
տեղւոյս յիշի Լեւոն, զորոյ քոյր առեալ էր Վահրամ
մարաջախտ, և արձակեաց՝ զի առցէ զԱլիծ դուստր Բ
Ռուբինի և մայր Բրնձին Ռուբինի (1220)։ Լեւոն տէր
էր և Մոխրոտ (Մաւխրոտ գրեալ) բերդի. ապա և այս
ոչ հեռի գուշակի 'ի Բերդկանն բերդէ։

359. ծան. Այաս. — Յիշեալն 'ի ծանօԹուԹեան՝ Յակոբ
վաճառական փոխատու՝ (Rex) Թագաւոր մականուա-
նեալ, սոսկական ոմն էր Գենուացի, յորոյ տոհմէ կան
և այժմ համանուն սերունդք 'ի Գենուա քաղաքի։

378. բ. տող գ. փոխանակ Անազարբայ՝ ընԹերցիր Մա-
մեստիոյ։

384. Թագւորի դրամ. այսպէս գրեալ գտաւ արդ և

'ի Հայումս, 'ի յիշատակարանի աւետարանի միոյ։

396. Սեաւ Դուռն, Գարա-Գափու. — Ըստ ասից և լրոյ Պելճիոյզոյ տիկնոջ և ժամանակագիր մեր վկայէ, եթէ զԴուռնն «այժմ Ղարանլըխ-ղափի ասեն». բայց ոչ զայս տեղի՝ այլ զմիւս Դուռն (416) իմանայ, ուր սպանաւն Եաղուպ-արսլան։

401. Մառի. — Նաև Հեթում Պատմիչ յայտնապէս կապան Մառոյ կոչէ զտեղի մեծի պատերազմին։

425. Պաղրաս. — Ժամանակագիր մեր ռամկօրէն Պախրաս կամ Պախրազ գրէ, և յամի 1201 նուաճեալ 'ի Լևոնէ. այլ գիտեմք վաղագոյն ևս ընդ ձեռամբ նորա։
426. բ. — Ցամի 1280 (յ'19 ամսեան հոկտեմբերի) զամ մի ևս զՊաղրաս և զԴարպսակ Թափեցին Թաթարք յԵգիպտացւոց։

429. Արսուս. — Ըստ գրից սահմանացն՝ հաւանօրէն կոչեցեալ է 'ի Թուրքաց Արսուզ-պուձաղի, ըստ ժամանակագրին մերոյ, ('ի յիշելն զտեղին նուաճեալ 'ի մերոյս Լևոնէ Ա.)։

473. Ի կարգի Թագաւորօրհնէից հետաքննելի մասն էր ձեւ երդման կամ խոստման Թագաւորին առ ազգն, որ 'ի կանոնիդ՝ հարցմամբ եպիսկոպոսապետին և հակիրճ պատասխանեաք ընծայելոյն՝ յարմարեալ է. այլ յառաջնումն անդ նուազի և 'ի վերականգնութեան Թագաւորութեանն, յորում այնքան իշխանք՝ շատ կամ սակաւ ազատակեացք՝ յանձն առին լինել լիճ Լևոնի, 'ի դէպ էր և սմա յայտնապէս կամ հանդիսապէս ինչ խոստանալ նոցա և համօրէն ժողովրդեանն և ուխտի եկեղեցւոյն։ Եւ արդ Ժամանակագիր մեր ասէ՝ սոցա «Պահանջեալ երդումն 'ի Լևոնէ, որ է այս. դրին
» զԱւետարանն առաջեւն. և այս է օրինակ երդմանն.
» Ես Լեւոն Թագաւոր Հայոց, որ կամօքն Աստուծոյ լի-
» նելոց եմ թագաւոր Հայոց, խոստանամ, ուխտեմ եւ
» երդնում առաջի Աստուծոյ, եւ նրանեկոյն Սրբոյն
» Գրիգորի Լուսաւորչին, որ լինիմ եւ յայսմ հետէ պա-
» հապան եւ զերծանօղ Հայրապետին եւ սուրբ Եկե-
» ղեցւոյն Հայոց եւ ամենայն կղերիկոսաց նորա, 'ի
» յամենայն կարի եւ 'ի յօգուտ իւր պահելով, եւ խնա-
» մելով զՀայրենիսն, զՊատիւ եւ զիրաւունս նորա. որ-
» չափ կարողացայց օգնականութեամբն Աստուծոյ,
» ըստ գիտութեան եւ կարողութեան իմոյ, ուղիղ եւ
» յստակ հաւատով. Այնպէս Աստուած օգնէ ինձ»:

» Երիցս կրկնէ »։ — Եթէ ոչ ըստ ամենայն բառից այսմ շարաբանութեան՝ արտասանեալ իցէ Լևոնի, այլ հարկ է թէ և ոչ հեռի յայսմանէ. զի ոչ վայրապար 'ի ներքս մուծանէ հեղինակն զայս ձև, մինչ լռէ զայլոց հանգամանաց հանդիսին. բայց տակաւին պահանջեն միտք՝ և բանս ինչ խոստման առ Պարոնայսն, զոր թերևս կանխաւ արարեալ էր, և յայտնեսցի ժամանակաւ։

475. բ. Աւագ Ջայուշ կամ Ջաւուշ. — Ցաւուրս յետին Թագաւորաց Սիսուանայ յայտնեցաւ Կոստանդին ոմն յանուանէ, զոր և նշանակեցաք 'ի վեր անդր 'ի կարգի նորայայտ պատմութեանն Սսոյ (542)։

480. Օրէնք վարչութեան Լևոնի. — Համարէաք անգիր աւանդութեամբ և Ասիզօք Երուսաղեմի վարել Լևոնի. այլ Ժամանակագիր մեր մեծ և կարևոր իմն յայտնէ, եթէ «Սա (Լևոն) ետ Դատաստանագիրք » հաստատել ձեռամբ, որ գրէ, թէ Լեւոն թագաւոր. յի- » շատակ նորա օրհնութեամբ եղիցի»։ Փափագելի է ամենայն բանասիրի գիւտ կամ ստուգութիւն այսպիսւոյ կարևոր սփերի. շատ լիցի յիշել մեզ 'ի հարևանցի, զի բաց յԱսիզաց Երուսաղեմի՝ կային յայնժամ թարգմանութիւնք Ս. Լամբրոնեցւոյն 'ի լատինէ և 'ի յունէ՝ այլ և այլ կարգաց, և օրինաց կայսերացն Բիւզանդիոնի, և Դատաստանագիրք Մխիթարայ Գոշի՝ հրատարակեալ էին սակաւ ամօք յառաջ քան զպսակադրելն Լևոնի։

484. Իշխանաց իշխան. — Եթէ զառաջինն իբրև յատուկ աստիճան միոյ միայնոյ սեփականեալ էր այս բարձ, յետոյ աւագագոյն իշխանք ևս այսպէս երևին կոչեցեալ, կամ օրինօք կամ ըստ հաճութեան պատուադրաց. և նոյն ինքն Պայլն և արքայահայր Կոստանդին՝ որ յաճախ Աւագ Պարոն անուանի, կոչի ևս ուրեք Իշխանաց իշխան. և առ նովաւ իսկ (յամի 1259) Սիմոն փիլիսոփայ գրիչ աւետարանին յԱրքակաղնի (546), Իշխանաց իշխան մեր կոչէ զՃօֆրէ՝ տէրն Սարուանդիքարի։

485. Մարաջախտք. — Որպէս յուշ արարաք յառաջն ուրեք (542), 'ի վերջին ժամանակս երևին բազմացեալ Մարաջախտք, վասն որոյ և հարկ լեալ զառաջինն և զգլխաւոր 'ի նոսա՝ կոչել Աւագ Մարաջախտ. և պարտ է յաւելուլ 'ի շարս նոցին յետ հռչակաւորն Պաղտինի (✝1337), ընդ աւագս՝ զԹորոս, և ապա զորդի նորա Վասիլ զեղբայր Քաջին Լիպարտի, յամի 1368—70, և զսա իսկ ընդ այլ մարաջախտս, յորոց կարգի էին 'ի նոյն ժամանակս՝ Օշին և որդի իւր Վասիլ. և հուսկ բնաւից իսկական մարաջախտից՝ Սոհէրն այն մտերիմ Լևոնի Ե, կարգեալ 'ի սմանէ։

486. Պռոքսիմոսք. — Ցետ մահուան Մեծին Լևոնի, և որպէս զուշակի՝ առ կենդանեաւ իսկ նորին, Պռոքսիմոս էր հին հայկական անուամբ Տրդատ ոմն։

486. Տիւան-պաշի. — Ցանուանէ զտաւ միայն Կարապետն այն (520) աղօթասէր և գրասէր յաւուրս Օշինի և մինչև Կոստանդնի Բ Թագաւորի. որոյ՝ (զի այր նշանաւոր էր վարուքն և տիրասիրութեամբ), նշանակի և օր մահուն, յ'18 կամ 'ի 16 սեպտեմբերի 1356 ամի, և թաղումն 'ի Սիս «'ի ժողովոյդ Աստուածածնայ», որ է անշուշտ Երեքխորանն (540)։ Ծանուցանէ Ժամանակագիրն՝ եթէ յաւուրս իւր «այժմ կայ երկու եղբայր 'ի Սիս. » ասեն թէ նորա ազգէն են, որ կոչին Պուըզենք»։

519. բ. Հեթում Բ Գրասէր և Գրավարժ. — Մեծ հռետորն Ցովհաննէս Եզնկացի, բազում դրուատեաք գրէ զՀեթմոյ՝ յառաջին ամս պսակազատութեան նորին

(1292). « Թագաւորն Հայոց Հեթում՝ որդի Լեւոնի » բարեպաշտի, որդւոյ իմաստուն արքային Հեթմոյ հօր՝ » և մօր Զապելի սրբոյ թագուհւոյ, դստեր առաջին պսակաւորին Լեւոնի, որդւոյ Ստեփաննեայ, որդւոյ Լեւոնի, » որդւոյ Կոստանդեայ, որդւոյ Ռուբենի մեծի իշխանի. » յերկուց թագաւորական ցեղիցն սերեալ զարմի՝ 'ի » Բագրատունեացն և յԱրծրունեացն. յայսոցիկ թագընկալաց և յիշխանաց բարձրագահից՝ բողբոջ բարեպաշտութեան բուսեալ և ծաղիկ գարնանային 'ի ձմեռնացեալ ժամանակիս երևեալ, սաղարթաւոր և բազմոստեան արքայական տնկոյն պտուղ քաղցրաճաշակ 'ի » համս և 'ի հոտս հասեալ. Հայկական սեռիս և Արամեան ազին բեկելոց և խոցոտելոց յայլալեզու ազանց՝ » սպեղանի և դեղ դիւրացուցիչ. բարեզարդութեան » կարգաց և կրօնից եկեղեցւոյ, և մանկանց նորին դասաւորութեան պայծառացուցիչ. վարժ աստուածային » գրոց սրբոց և պատուող ուսումնականաց և գիտութեան հմտականաց, բարեգութ առ ամենեսեան և » խնամածու. յորմէ և ես նուաստ Յովհաննէս Երզնկացի՝ » բազում խնամ սիրոյ և առատութիւն գթոյ վայելեցի. » և զի յոյժ զդաստ և ուսումնասէր ունէր բարս բարեմիտ » թագաւորն. որ և 'ի դառն ժամանակիս՝ յորում աշխարհ ամենայն իբրև զծով անդնդական խորովք խռովեալ և ամբոխեալ ծփէր, և աւազանման որդիքն Արբահամու... և աղախնածին որդիքն Հագարու ծանրացեալ 'ի վայր քարշեալ ծածկէին զաստեղացեալ որդիսն հօրն հաւատոց, վասն պայծառ լուսոյ առաքինութեանն 'ի նոսա նուազելոյ, և բռնացեալ նեղէին » մաշել սրով և գերութեամբ. իսկ բարեսէր թագաւորն » Հեթում՝ իբրև զաստղ նշանաւոր լուսանշոյլ փայլէր, և » զաղքատութիւն եկեղեցւոյ մօր ծածկէր, և ոչ դադարէր 'ի գիրս ստանալոյ, և յեկեղեցւոյ գանձս յաւելումն առնելոյ։ Վասն որոյ և՛ ես նուաստ Յովհաննէս » Երզնկացի, բիւր բարեաց պարտականս խնհեմամիտ և » իմաստուրեանն պատուող արքայի՝ ընծայեցի զիւքր զայս » գրկունք, որ կոչի Քերական, առ 'ի քերել և սրբել, » պարզել և զտել զամենայն բանախօսութեան իրագործութիւն՝ վեցեակ կատարելաթիւ սորին մասամբքն։... » Արդ 'ի յայսմ ժամանակի որ էր թուականիս Հայկազնեան տումարի ՉԽԲ, գրեցաւ գրկունքս։... Արդ որք » ընթեռնուք զայս բան յիշատակի՝ և օգտիք յարուեստական գրոյս իմաստութենէ, յիշեսջիք բարի յիշմամբ » զբարեպաշտ թագաւորն Հեթում. հայցել 'ի Տեառնէ » թողութիւն մեղաց, և խնդրել արքայութիւն անմահական կենաց. յիշել ընդ նմին և զորբասնունդ և զբարեբարոյ եղբարս նորա, զոր սնուցանէր երկիւղիւ Տեառն » և ուսմամբ իմաստուրեանն »։ Տես և զգովեստ նորին՝ ըստ աւանդելոցս յէջ 103, 'ի բնագրին, և 'ի ծանօթութեան, որ Ստեփաննոսի Կրակեցոյն է բան, առն իմաստասիրի, կամ իմաստից սպասաւորի, որպէս ինքն ասաց (547)։

527. Ֆիլիպ. — Փռանկ հեղինակ ազգաբանութեան Անդրածովու տոհմից (Familles d' Outremer) ասէ, ըստ թարգմանութեան Հեթմոյ Պատմչի. « Ֆիլիպն պսակեցաւ ընդ Զապէլ թագուհին Հայոց, և անդ սպանաւ ». իսկ սա ծանուցանէ զի ըմբռնողք նորին 'ի Թիլ՝ էին Ճօֆրի տէրն Սարուանդիքարի և Պաղքսիմոսն Տրդատ։

529. Պատմութիւն Լեւոնի Ա. — Մինչդեռ 'ի տպագրել էին յետին բանք յուսոյ իմոյ, (յառաջին աւուրս ամսեան յունիսի, 1885), եհաս 'ի ձեռս իմ համառօտ Պատմութիւն Ռուբինեանց՝ գործ Հեթմոյ տեառն Կոռիկոսի. յորում գրէ և զայս բան. « Արար պատերազմունս մեծամեծս, որպէս գտանի 'ի Լիապատում գիրս Պատմութեան նորա »։Ստուգիւ ուրեմն գրեալ կայր լիապատում գիրք գործոց արժանաւոր թագաւորին Լեւոնի. մնայ արդ փափագելի վերայայտնութիւն գրոցն։



# ՑԱՆԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԿԻԼԻԿԻՈՑ ԵՒ ՍԻՍՈՒԱՆԵԱՑՑ

---

Ն. Ք.

400 Անցք Կիւրոսի փոքու ընդ կապանս Կիլիկիոյ։ 127

333 Աղեքսանդր Մեծն անցանէ ընդ Դրունս Կիլիկիոյ։ 39

— Իսսեան ճակատամարտ (29 Նոյեմբերի)։ 398

103 Առաջին նուաճումն Կիլիկիոյ 'ի Հռովմայեցւոց։ 40

94 Սելեւկոս Թագաւոր Ասորւոց սպանանի 'ի Մամեստիա։ 247

69 Տիգրան Արշակունի արշաւէ 'ի Կիլիկիա, աւերէ զՍոլի։ 40

67 Պոմպէոս նուաճէ զԿիլիկեցիս. վերականգնեալ զՍոլի՝ անուանէ Պոմպէուպոլիս։ 40

48-7 Կիկերոն կողմնակալ Կիլիկիոյ։ 40

14 Ծն. Սօղոս — Պօղոս Առաքեալ 'ի Տարսոն։ 40. 265

Յ. Ք.

117 Տրայիանոս կայսր մեռանի 'ի Սելինունդ-Տրայիանոպոլիս։ 317

194 Սեւերոս կայսր վանէ զՆիգեր, մերձ յԻսսոս։ 400

305 Նահատակութիւն Ս. Անարծաթիցն յԱյաս, (27 սեպտ.)։ 358

— — Ս. Զենոբիոսի և Զենոբիայ։ 40

304 — Սրբոց Տարագոսանց (11 հոկտեմբ.)։ 41. 235

316 — Ս. Աւքսենտի եպիս. Մամեստիոյ (18 դեկտ.)։ 247

338 Արքեղայոս Ծոփաց իշխան սպանեալ զՍ. Արիստակէս փախչի 'ի Կիլիկիա։ 266

340 Մանաճիհր Ռշտունի զօրավար Կիլիկեան գնդին։ 41

361 Կոստանդ կայսր † 'ի Մոպսուկրենս. թաղի 'ի Տարսոն։ 41. 125

362 Նահատակութիւն Ս. Սահփանոսի Ուլնեցւոյ և ընկերացն, (18 օգոստ.)։ 184

363 Յուլիանոս Ուրացող թաղի 'ի Տարսոն։ 41

381-428 Թէոդորոս Մոպսուեստեայ եպիսկոպոս, որ գրէ առ Ս. Մեսրովբ։ 41

444 Թէոդոս Բ կարգէ զԱնազարբա՝ մայրաքաղաք Բ Կիլիկիոյ։

480 Իլլոս զօրավար Զենոնի կայսեր՝ բանտարգել առնէ 'ի Պապեռոն բերդ զՎերինա Թագուհի և զհամախոհս նորին։

484 Լեւոնտ (եղբայր Զենոնի) կայսր անուանէ զինքն 'ի Տարսոն։

525-6 Անազարբա կործանեալ 'ի սասանութենէ երկրի՝ նորոգի հրամանաւ Յուստինիանոսի կայսեր։ 237

531 Հոնաց աւարառուք մինչև 'ի Կիլիկիա։

561 Սրածութիւն 'ի Կիլիկիա։

622 Հերակլ կայսր հարկանէ զՊարսս 'ի դաշտին Կիլիկիոյ։ 42

625 Նոյն դարձեալ վանէ զնոսա 'ի սահմանս Ատանայ։ 42

647 Մուավիէ աւարառու սփռէ 'ի Կիլիկիա։

687 Յուստինոս Բ բնակեցուցանէ զՄարդայիտս Լիբանանու 'ի սահմանս Ատտալիոյ և Կիբիւռացւոց։

693 Մոլիմ ամիրայ վերականգնէ զՄամեստիա։ 247

704 Արաբացիք աւերեն զՍիս։ 214

708 Նոյնք առնուն զՊոդանդոն։ 130

716 Օմար՝ 1300 նաւուք զկայ առնու 'ի ծովեզերս Կիլիկիոյ։

809 Առաջին բնակութիւն Հայոց 'ի Սիս, ըստ Արաբացւոց։ 210

829 Իլ-Մէմուն ամիրայ նուաճէ զԿիլիկիա։ 42

832 Նոյն պաշարէ և ոչ կարէ առնուլ զամրոցն Լուլուայ։ 114

835 Նոյն մեռանի 'ի Պոդանդոն կամ 'ի Տարսոն։ 132. 266

876 Զօրավարք Վասլի Ա վանեն զԱրաբացիս 'ի Պոդանդոն։ 130

878 Նոյնք առնուն զԼուլուա և զՄաղկա, զապաստանարանս Մանիքեցւոց։

880 Միւթեվվաքքիլ գրաւէ զԱնազարբա. Վասիլ կայսր զերծուցանէ։ 42. 238

900-10 Սասնեցի ազնուականք յիսուն գաղթեալք՝ տիրեն կողմանց ինչ Կիլիկիոյ։

— Գէորգ Մլեհ ապետ նուաճէ զկողմանս Ծամանդեայ և Լիկանդոնի։ 531

— — կարգի Թեմակալ կողմանցն։ 531

915 — Ասպատակէ և աւերէ զսահմանս Մարաշու։

... — Անուանի զօրապետ Մամեստիոյ, Անազարբայ և Ծամանդեայ։ 531

930-3 — Ընդ Յովհ. Գուրգենի կամ Գուրգենայ՝ թափէ զՄելտենի յայլազգեաց։

962 Նիկեփոր կայսր տիրէ Անազարբայ և 55 բերդից։ 428

965 Յովհ. Զմշկիկ կայսր առնու զՏարսոն։ 42. 266

971 — Առնու զԱտանա։ 42

975 — Անցանէ ընդ նեղուցս Պոդանդոնի։ 131

970-90 Խաչիկ Ա կաթողիկոս՝ եպիսկոպոս կարգէ Տարսոնի և Սելինունդի։ 71

977 Ատտալիացիք կուսակիցք Վարդայ ընդդէմ Վասլի Բ, զդէմ ունին Կիբիւռացւոց։

1045-50 Ռուբէն Սասնեցի տիրէ կողմանց Կիլիկիոյ և Փռիւգիոյ, և Կոսիդառայ բերդի։ 44

1056-7 Թուրքք գրաւեն զԱտտալիա և զՌուհ։ 55. 302

1050-60 Ապլղարիպ Արծրունի կուսակալ կարգի Տարսոնի։ 71

1069 Խաչատուր Վեստ կողմնակալ Կրօգեան Անտիոքայ՝ վանէ զայլազգիս։ 46

1071 — Պաշտպանէ զԴիոժեն կայսր յԱտանա. պատերազմի 'ի Կապան։ 46

1072 Դիոժեն հրաժարէ 'ի կայսերութենէ 'ի սահմանս Ատանայ։ 257

1073 Օշին Գանձակեցի նախահայր Հեթմեանց՝ տիրէ Լամբրոնի և Պապառոնի։ 46. 77

— Հալկամ եղբայր նորա իշխան կարգի ծովակողմանց Կիլիկիոյ։ 46

— † Գէորգ Լոռեցի աթոռակալ Գր. Վկայասէրի. թաղի 'ի Տարսոն։ 266

1074 Սկիզբն սուլտանութեան Իկոնիոնի։ 42

1076-9 Գագիկ Բ Բագրատունի գայ առ Ապլղարիպ վասն խնամութեան։ 71

1078 † Ապլղարիպ. յաջորդէ նմա Սահակ։ 71

1080 † Գագիկ Բ Բագրատունի (5 մայիս)։ 44

1080 Ռուբէն Ա իշխանանայ Հայոց Կիլիկիոյ և սահմանացն. նստի 'ի Կոռոմոզոլ: 44
1095 † Ռուբէն (1 փետր.). Թաղի 'ի Կաստաղօն: 44
— Կոստանդին որդի նորա պայազատէ: 47
1097 Անցք Ա խաչակրաց ընդ սահմանս Կիլիկիոյ: 150
— Կոստանդին և այլ Հայ իշխանք օգնեն խաչակրաց: 47
— Օշին տէր Լամբրունի հրաւիրէ զՏանգրի 'ի Տարսոն: 258
— Կուէլֆ Բորգոնդիացի տիրէ Ադանայ: 257
— Տանգրի և Պաղտին ընդդիմամարտին վասն տիրութեան Մամեստիոյ: 248
1098 Կոստանդին գողանայ զՎահկա, և անդ հաստատէ զաթոռ իւր: 47
— —փեսայացուցանէ զՃօսլէն 'ի դուստր իւր: 47
— Թորոս եղբայր Կոստանդնի փեսայացուցանէ զՊաղտին 'ի դուստր իւր Արդա: 47
— Ջեռն տան Հայք 'ի պաշարումն և յառումն Անտիոքայ (3 յունիս):
1099 † Կոստանդին (27 մայիս). Թաղի 'ի Կաստաղօն: 162
— Թորոս Ա Պանսեբաստոս, պայազատէ: 48
1101 — Նիզակակցեալ փռանկաց վանէ զՅոյնս: 49
— Տանգրի բանտէ 'ի Սարուանդիքար զՌեմունդ Սէն-Ժիլ: 209
1103 Թորոս վանէ զԲուտումիտ զօրավար Յունաց: 49
1104-5 — Շինէ զմեծ եկեղեցին Անազարբայ: 49
1105 Ասպիետ արշակունի կուսակալ Կիլիկիոյ հալածի 'ի Տանգրեայ: 49. 248
— † Մարկոս Ճգնաւոր. Թաղի 'ի Կաստաղօն: 165
.... Շինութիւնք Դրազարկ և Մաշկեւոր վանաց: 231. 407
1106 Տանգրի նուաճէ զՄամեստիա: 248
1108 Ալեքս կայսր տայ Բրնձին Անտիոքայ զմասն Կիլիկիոյ: 114
1111 Արշաւանք Թուրքաց յԱնազարբա: 49. 239
— Թորոս առնու զԿնդռոսկաւի բերդ. լուծանէ զվրէժ Գագկայ 'ի Մանդալեանց: 49
1113 Արշաւանք Թուրքաց 'ի յունական Կիլիկիա. †† Տիգրան և Ապլասաթ զօրավարք: 49
1114 Ժաժ մեծ 'ի Կիլիկիա. աւերի և Սիս: 49. 210
— † Գէորգ Մեղրիկ կանոնադիր Դրազարկու. Թաղի անդ: 231
1118 Պր. Լեւոն նիզակակից իշխանին Անտիոքայ՝ վանէ զայլազգիս առ Ազազ քաղաքաւ: 50
1124 Աւետիք Ճարտար մեքենագործ՝ յաջողէ խաչակրաց զառումն Տիւրոսի:
1127 † Կիրակոս երկրորդ կանոնադիր Դրազարկու: 231
1129 † Թորոս Ա (2 փետր.). Թաղի 'ի Դրազարկ: 50. 232
— Լեւոն եղբայր Թորոսի պայազատէ: 50
1130 † Փառլուն Թոռն ամիրային Անւոյ, հաւատացեալ. Թաղի 'ի Դրազարկ: 232
— Լեւոն տիրէ Տարսոնի: 266
— — Դաշնակցեալ Զանգեայ՝ մարտնչի ընդ Անտիոքացիս: 50
1131 — Հալածէ զԴանիշմէնտն Էլ Ղազի: 50
1136 — Կորզէ զՍարուանդիքար 'ի փռանկաց: 50. 209
— — Պատերազմ յուզէ ընդ Պաղտինի տեառն Մարաշոյ: 209
— — Դաւեալ 'ի Բրնձէն Անտիոքայ, և զերծանի: 51
1137 — Պաշարէ զՍելեւկիա Իսաւրիոյ: 51
— Յովհաննէս Ալեքս կայսր դիմէ 'ի վերայ Լեւոնի: 51
— Պաշարումն Վահկայ և նուաճումն 'ի Յունաց: 162
— Լեւոն անձնատուր լինի 'ի կայսր և վարի 'ի Կ. Պօլիս: 52
1138 Մելիք Ահմէտ Դանիշմէնտ նուաճէ զՎահկա և զԿապան, և այլն: 52
1141 † Լեւոն 'ի Կոստանդնուպօլիս (8 մայիս): 52
1142 Երկրորդ անգամ գալուստ Յովհաննու կայսեր 'ի Կիլիկիա: 330
1143 — Երրորդ գալուստ և մահ 'ի Քաղցրիկ (8 ապրիլ): 42
— Մանուէլ որդի և յաջորդ նորին Թափէ զՊռականա 'ի Թուրքաց: 330
— Պեմունդ Բ բրինձ Անտիոքայ † 'ի մարտի, 'ի սահմանս Մըրասյ: 255

1144 Թորոս Բ, զերծեալ 'ի Կ. Պօլսոյ սկսանի նուաճել զԿիլիկիա: 52-3
1145 — Առնու զՎահկա: 53
— Ծն. Ռուբէն Բ, որդի Ստեփանէի: 56
1149 Թորոս տիրէ Անազարբայ, և անդ հաստատէ զգահն: 53
1150-1 — Առնու զՄամեստիա, և ըմբռնէ զդուքսն Թովմաս: 53
1151 — Առնու զԹիլն Համտունայ: 205
— Ծն. Հեթում (Հեղի) որդի Օշնի տեառն Լամբրունի: 81
1152 Թորոս վանէ զՅոյնս առ Մսաւ, գերեալ զզօրավարս նոցա, ընդ որս և զՕշին տէր Լամբրունի: 81
— † Սմբատ տէրն Պապեռօնի յայնմ մարտի: 71
1153 Ծն. Ս. Ներսէս Լամբրոնեցի: 81
1153-5 Սուլտանն Իկոնիոնի երիցս արշաւեալ 'ի Կիլիկիա՝ ոչ յաջողի: 53. 63
1155 Թորոս հակառակեալ կռուի ընդ փռանկաց յԱղեքսանդրեակ, և հաշտի: 54
— — Արշաւէ 'ի կողմանս Հալպայ, և դառնայ յաղթութեամբ: 54
1157 — Նիզակակցի փռանկաց 'ի պաշարման Կեսարիոյ Պաղեստինոյ:
— Ստեփանէ եղբայր նորա տիրէ Մարաշոյ և Սեաւ լերանց: 54
— — Զինակիրս Բեհեսնոյ վարէ 'ի դաշտն Անազարբայ: 244
— Թորոս դարձուցանէ զԲերդուս 'ի Սուլտանէն: 195
— — Վանէ զզօրավարս Մանուէլի կայսեր: 54
1158 Մանուէլ կայսր գայ 'ի վերայ Թորոսի, որ ապաւինի 'ի լերինս: 54. 115. 148
1159 — Ներէ Թորոսի և պատուէ սեբաստոսութեամբ: 54
1159-60 Թորոս վերստին նուաճէ զԿիլիկիա: 54
1161 —Նիզակակցեալ Թագաւորին Երուսաղէմի արշաւէ 'ի Բերիա: 55
1162 † Բարսեղ վարդապետ, ողբասացն † Պաղտինի տեառն Մարաշոյ: 231
1163 Թորոս երթայ յԵրուսաղէմ յուխտ, և պատուի 'ի Թագաւորէն: 55
1163 Թարգմանութիւն Մեկնութեան Կաթողիկեայ Թղթոց 'ի Դրազարկ: 516
1163-4 Բենիամին Գուտելայ մեծ աշխարհագիր Հրեայ՝ անցանէ ընդ Կիլիկիա: 55. 353.
1164 Թորոս միաբանի ընդ փռանկաց ընդդէմ Նուրէտտինի: 55
1165 Ստեփանէ սպանանի 'ի Յունաց (3 փետր.). վրէժք Թորոսի: 206. 233
— Թորոս աղարտէ զվիճակս Լամբրունի: 81
1166 Ս. Ներսէս Շնորհալի գայ 'ի Լամբրուն, հաշտեցուցանել զՕշին ընդ Թորոսի: 56. 81
1166-7 Անդրոնիկոս երկրորդ անգամ եկեալ 'ի Կիլիկիա՝ հալածի 'ի Հայոց: 55
— Իսահակ Կոմնեն Թոռն եղբօր Մանուէլի եկեալ փոխանակ նորա՝ ոչ յաջողի:
1167 Մլեհ եղբայր Թորոսի վասն դաւաճանութեանն հալածեալ յարի 'ի Նուրէտտին: 56
1168 Ներսէս Լամբրոնեցի ձեռնադրի քահանայ: 86
1169 † Թորոս Բ (11 մայիս). Թաղի 'ի Դրազարկ: 56. 232
1170 Մլեհ բռնակալէ, հալածեալ զԹովմաս պայլ: 56
— Ռիթա կին Ստեփանէի զերծուցանէ զորդիսն 'ի Պապեռօն: 71
— Մլեհ դաշնակցի ընդ Նուրէտտինի, և ընդ Իզզէտտինի սուլտանի Իկոնիոյ:
1171 — Հալածէ զՏաճարական ասպետս 'ի սահմանաց իւրոց: 56
1172 — Արշաւեալ 'ի սահմանս Անտիոքայ և Ասորւոց՝ հալածի 'ի Թագաւորէն Երուսաղէմի: 57
1173 † Ներսէս Շնորհալի (8 օգոստ.): 57
1173 Մլեհ կորզէ կաթողիկոս զԳր. Տղայ, պաշտպանութեամբ Նուրէտտինի: 57
— — Պաշարէ զԼամբրուն. կաթողիկոսն միջնորդէ 'ի հաշտութիւն: 57
— — ԶՏարսոն Թափեալ 'ի Յունաց՝ տայ դաշամբ՝ Բրնձին:

1173 Ներսէս Լամբրոնեցի գրէ զԼուծմունս Պարապմանց Կիւրղի։ 99
— — Ձեռնադրի եպիսկոպոս։ 97
— — Ընդ եղբօր իւրոյ Հեթմոյ զարդարէ զեկեղեցին Սկեւռայ։ 97
— Մլեհ սպանեալ թաղի 'ի Մեծքար։ 57
— Ռուբէն Բ պայազատէ։ 57
1177 Ներսէս Լամբր. աւարտէ զՄեկնութիւն Պատարագի։ 87. 113
1177 Ռուբէն նեղէ զԼամբրոնեցիս։ 82
1178 Ներսէս Լամբր. գրէ զՄեկնութիւն Առակաց գրոց. սկսանի զՍաղմոսացն, և աւարտէ 'ի 1180։
1179 Ժողով Հռոմկլայ. ատենաբանութիւն Ներսիսի Լամբր.։ 87
— Ներս. Լամբրոն. թարգմանէ զՄեկնութիւն Յայտնութեան գրոց։ 113
— — Ի Սիմանակլայ վանս Յունաց քննէ զգրեանս։ 200
1180 Դիմումն Սալահէտտինի 'ի Կիլիկիա. Ռուբէն հաճէ զնա և յետս դարձուցանէ։ 58
1181 Ռուբէն կին առնէ զԻզաբել դուստր տեառն Քարաքայ։ 58
1182 — Ջեղբայր իւր Լեւոն տէր կարգէ Կապան բերդի։ 191
1183 — Գնէ զՏարսոն 'ի բռնձէն Անտիոքայ։ 57
— — Ըմբռնէ զԿիռ Սահակ կողմնակալ Յունաց։ 58
1183-5 — Պաշարէ զԼամբրոն։ 58
1184 Լուկիոս Գ գրէ առ Գրիգոր Տղայ (դեկտ. 3), առաքելով զգիրս կարգաց եկեղեցւոյն Հռովմայ։ 466
1185 Ռուբէն դաւով ըմբռնի 'ի բռնձէն Անտիոքայ, և տուեալ պատանդս՝ զերծանի։ 58. 439
1185-6 Ներս. Լամբր. թարգմանէ զկարգս լատին եկեղեցւոյ։ 472
1185-6 Լեւոն յանձանձէ զաշխարհն 'ի գերութեան եղբօրն։ 439
1187 † Ռուբէն Բ (6 մայիս). թաղի 'ի Դրազարկ։ 58. 439
— Լեւոն եղբայր նորա պայազատէ։ 439
— Սալահէտտին առնու զԵրուսաղէմ (յուլիս 5)։
1188 Թուղթ Կղեմայ Գ առ Լեւոն և առ կաթողիկոսն։
— Լեւոն շինէ զԿլայն Անազարբայ։ 239
— — Հարսնացուցանէ զդստերս Ռուբինի։ 439
— † Սիր Պաղտին յերթալն գողանալ զՊառականս բերդ։ 330
1189 Լեւոն վանէ զապստամբ Ռոստոմայ, որ սպանանի 'ի մարտին։ 209. 442
— — Հարկանէ զԹուրքմանիկս 'ի կողմանս Մարաշոյ։ 443
1189 — Վանէ զզօրս սուլտանին Իկոնիոնի։ Առնու զՊառականս բերդ։ 443
— — Առնու զՊաղրաս և զԴարբսակ։ 444
— Թուղթ Կղեմայ առ Լեւոն և առ կաթողիկոսն (մայիս 28)։ 466
1189—90 Գ խաչակրաց դիմումն յարևելս, և մուտք 'ի սահմանս Կիլիկիոյ։ 443
1190 Լեւոն առաքէ 'ի Հռոմկլայ զՆերս. Լամբր. զոր կողոպտեն Թուրքմանք։ 87. 447
— — Առաքէ զնոյն և զայլս՝ ընդ առաջ Փրեդրիկ կայսեր (8 յունիս)։ 283. 447-8
— † Փրեդրիկ Ա Շիկամօրուս կայսր 'ի գետն Սելեւկիոյ (10 յունիս)։ 283. 448
— Որդի նորա համանուն 'ի Մարս հիւանդացին, առ որ գայ Գրիգոր Տղայ։ 448
— Ներս. Լամբր. թարգմանէ զկարգ Թագաւորօրհնէից։ 472
1191 Փիլիպպոս Օգոստոս թագաւոր Փռանկաց անցանէ ընդ Սելեւկիա։ 280. 449
— Լեւոն նիզակակցի Ռիքարդոյ թագաւորի Անգղիոյ 'ի վանել զԿիռ Սահակ 'ի Կիպրոսէ։ 449
— — Ի դառնալն 'ի Կիպրոսէ՝ հալածէ զՀէնս 'ի ծովուն։ 449
— — Օգնէ խաչակրաց 'ի պաշարման և յառման Պտղոմայիդայ (15 յուլիս)։ 449
— — Տիրէ Հռոսոսի։
1193 Սպառնալիք Սալահէտտինի. արհամարհէ Լեւոն։ 450
— Գէորգ Սկեւռացի անուշութեամբ Ներսիսի Լամբրոնեցւոյ յօրինէ զՀարանց վարս։
— Սալահէտտին մեռանի 'ի Դամասկոս (4 մարտի)։ 451

1193 Քէյ խիւսրեւ սուլտան Ալպաստանայ ապաւինի 'ի Լեւոն։ 450
— Լեւոն դաւով ըմբռնէ զդաւադիրն Պեմունդ Գ։ 454-5
— † Գրիգոր Տղայ (25 մայիս). †† Հեթում և Շահնշահ Սասնեցիք քեռորդիք նորա։ 252. 441. 460
— Ներսէս Լամբրոն. թարգմանէ զԳիրս Օրինաց Բիւզանդացւոց։ 86
1194 Ենրիկ Շամբանեայ թագաժառանգ Երուսաղեմի՝ գայ առ Լեւոն՝ վասն ազատութեան Բրնձին։ 455-6
— Ալիծ դուստր Բ Ռուբինի պսակի ընդ Պեմունդի որդւոյ Բրնձին։ 441
— Արձակի Բրինձն պայմանօք։ 456
— Գրիգոր Ը կաթողիկոս արգիլեալ 'ի Կոպիտառ՝ քարավէժ լինի։ 157. 232. 461
— Փոխանակ նորա կարգի Գրիգոր Ապիրատ։ 461
1195 Լեւոն մեծարէ 'ի Կոռիկոս զԱմուրի տէր Կիպրոսի։ 333. 456
— Թուղթ Ներս. Լամբրոնեցւոյ առ Լեւոն։ 461-2
—6 Լեւոն տիրէ Տիանայ։
1196 Դեսպանք Լեւոնի առ կայսր 'ի Միլան, 'ի խնդիր թագի։
— Լեւոն ընդունի թագ 'ի Յունաց կայսերէ և պսակի 'ի Տարսոն։ 462
— Ներսէս Լամբրոն. թարգմանէ զՋինուորական օրէնս։
— † Ռեմունդ ժառանգ Անտիոքայ, փեսայ Լեւոնի, յարքունիս սորա։ 490
— Ծն. որդի նորա որ կոչի Ռուբէն-Ռեմունդ։ 490
1197 Լեւոն թափէ զընտանիս Ամուրեայ 'ի Գաննատի յելուզակէ։ 457
— — Առաքէ զՆերսէս Լամբր. 'ի Կ. Պօլիս վասն խնդրոյ հաւատոյ։ 87. 465
— — և զՅովհաննէս արքեպիսկոպոս Սսոյ 'ի Պտղոմայիս՝ 'ի խնդիր թագին։ 464
1198 † Ս. Ներսէս Լամբրոնեցի (14 յուլիս)։
— Գրիգոր Սկեւռացի յօրինէ զԱրեգականն արդարութեան շարական։ 101
1199 Մեծահանդէս օծումն Լեւոնի Ա 'ի թագաւոր Հայոց, 'ի 6 յանուարի։ 470
— Լեւոն դեսպան առաքէ առ Պապն՝ զԲոկուրան։ 491-2
— — Տայ մկրտել զՌուբէն-Ռեմունդ 'ի ձեռն արքեպիսկոպոսին Մոգունտիոյ։ 477
— — Վանէ զապստամբս սուլտանին Իկոնիոնի, և դնէ զաշն հաշտութեան։
— — Հաստատէ զՊեմունդ Գ յաթոռ նորին՝ յԱնտիոք։ 490
1199 Իննովկենտիոս Գ գրէ առ իշխանս Հայոց 'ի խաչակրութիւն (17 դեկտ.)։
— — Գրէ պատասխանի ընծայաբեր թղթոյ Լեւոնի (նոյեմ. 23)։
1200 Լեւոն ընդունի յԻննովկենտեայ զԴրօշ Ս. Պետրոսի։ 491
1201 — Ըմբռնէ զՀեթում Լամբրոնեցի, և առնու զԼամբրոն։ 83. 504
— † Պեմունդ Գ. որդի նորա Դ Պեմունդ գրաւէ զաթոռն, զըրկեալ զՌուբէն-Ռեմունդ։ 493
— Լեւոն 'ի բաց դարձուցանէ զսուլտանն Իկոնիոնի որ դրդմամբ Բրնձին գայր 'ի վերայ իւր։
— — Շնորհէ Գենուացւոց ազատ վաճառականութիւն 'ի Սիսուան։ 488
— — Նոյնպէս և Վենետաց։ 488
1201 Լեւոն և Գր. Ապիրատ գրեն առ Պապն շնորհակալիս և խնդիր օգնութեան (հոկտ.)։ 492
1202 Լեւոն բանտարգել առնէ զՀեթում Լամբրոնեցի։ 502
— Իննովկենտ. գրէ առ Լեւոն, վասն խնդրոյ բանադրանաց։
1203 Գր. Ապիրատ հաշտեցուցանէ զԼեւոն և զՀեթում. և ինքն † 'ի Սիս։ 503
— Հեթում կրօնաւորեալ կոչի Հեզի, և առաջնորդ կարգի Դրազարկու։ 503
— Յովհաննէս Մեծաբարոյ կարգի կաթողիկոս։ 505
— Առումն Կ. Պօլսի 'ի Լատինաց (13 ապրիլ)։
— Լեւոն պաշարեալ առնու զԱնտիոք (նոյեմբ. 11). յետ երից աւուրց ընկրկի։ 494

1203 Լեւոն հալածէ զՏաճկական ասպատակս կուսակիցս Պեմունդի։ 495
1204 Իննովկենտ. Գ առ Լեւոն վասն վէճին ընդ Տաճարական ասպետաց։ 495
— Նուիրակք Պապին ժողով գումարեն, և 'ի դիմաց նորա պատուէն զեպիսկոպոսունս Հայոց։ 494
— Սոփրէտ նուիրակ հաշտեցուցանէ զԼեւոն ընդ Տաճարականաց։ 494
1205 Լեւոն արշաւէ յԱլեպատան, այլ ոչ կարէ նուաճել։ 514
— — Մերժէ զդշխոյն վասն ծանր յանցանացն։ 508
— Իննովկենտիոս Գ առաքէ նոր նուիրակս վասն անտիոքեան խնդրոյն։ 496
— Գրիգոր Սկեւռացի գրէ զՆերբողեան Ս. Ներսէսի Լամբրոնեցւոյ, 'ի խնդրոյ քեռորդւոյ նորին։
1206 Լեւոն նորոգէ կամ շինէ զբերդն Կոռիկոսի։ 333
— — Երկրորդ անգամ մտանէ յԱնտիոք և նստուցանէ իշխան զՌուբէն։ 497
— — Կարգէ վերստին եպիսկոպոսունս լատինս 'ի Տարսոն և 'ի Մսիս։ 497
— Պեմունդ վերստին տիրանայ Անտիոքայ, բանտէ զպատրիարքն, և բանադրի։ 498
— Ծն. Սմբատ Գունդստաբլ որդի Կոստանդնի (Պայլի)։
1206—7 Լեւոն բանադրել տանէ զԿուսմարտինանոս. վասն որոյ գժտի ընդ նմա կաթողիկոսն։ 506
— — Մերժէ զՅովհաննէս կաթողիկոս, և փոխանակ նորա կարգէ զԴաւիթ Արքակաղնեցի։ 507
1207 Գլըճ-արսլան սուլտան տիրէ Անտալիայ։ 303
— Զաքարիա Սպասալար գրէ առ Լեւոն, և լինի ժողով 'ի Սիս վասն խնդրոց նորին։ 507-8
1208 Սուլտանն առնու զամրոցն Բերդուս։ 507. 514
— † Դաւիթ կաթողիկոս։ — Յովհաննէս վերադարձի, հաշտեալ ընդ Լեւոնի։ 509
1209 Լեւոն ժառանգ իւր հրատարակէ զՌուբէն — Ռեմունդ։ 509
— Իննովկենտ. գրէ առ Լեւոն, զինադուլ առնել ընդ կոմսին Տրիպոլեայ (յանուար 12)։ 499
1209—10 Լեւոն օգնութեամբ ասպետաց Հիւանդանոցին վանէ զԻկոնիոն սուլտան։ 514
1210 — Տայ ասպետացն զՍելեւկիա, զՆոր բերդ, եայլն։ 500. 514
— Իննովկենտ. Գ հաստատէ զտուրս Լեւոնի։ 500
— Խոստացեալ Լեւոնի տալոյ Ասպետացն զԼարանդա քաղաք (օգոստոս)։
— Իննովկենտ. Գ գրէ առ ուխտ եկեղեցւոյն Հայոց վասն խընդրոյ բանադրանաց (օգոստոս 10)։ 500
— — Նուիրակ հաշտութեան առաքէ զՍիկարդ եպիսկոպոս Կրեմոնայ։ 499
— Լեւոն կին առնէ զԻզապել կամ Սիպիլ դուստր Ամաւրեայ թագաւորին Կիպրոսի։ 511
— — Առաքէ զՀեթում-Հեղի դեսպան առ Պապն և առ կայսրն Ոթոն։ 510
1211 — Պսակէ զՌուբէն թագաւ՝ զոր 'ի ձեռն Հեղեայ առաքեալ էր բերել 'ի կայսերէ։ 510
— — Սաստկացուցանէ զպատերազմ ընդ կոմսին Տրիպոլւոյ (Դ Պեմունդ), վասն որոյ բանադրի։ 500
— Իննովկենտ. Գ գրէ առ լեգատ իւր և առ այլս՝ վասն բանադրանաց Լեւոնի (մայիս 18-9)։ 500
— Վիլպրանտ Օլտենպուրկեան հիւր յարքունիս Լեւոնի։ 476
— Լեւոն պաշարէ զԿեսարիա նիզակակցութեամբ Տուղրիլշահ սուլտանի Կարնոյ։ 514
1212 Մեծահանդէս Ջրօրհնէք 'ի Սիս, զոր նկարագրէ Վիլպրանտ։ 458, 476
— Լեւոն տայ Տեւտոնեան ասպետաց զԱմուտա բերդ, եւն։
— — Զինու զօրութեամբ մուծանէ զՌուբէն յԱնտիոք, և աւար հարկանէ։ 501
1213 Լեւոն հաշտեալ ընդ Տաճարականաց՝ արձակի 'ի բանադրանացն։ 501
1214-5 Լեւոն փեսայացուցանէ 'ի դուստր իւր Ռիթա՝ զՅովհ. Պրիեն Թագաժառանգ Երուսաղեմի։ 510
— — Տայ ասպետաց Հիւանդանոցի զԿանէր։ (23 ապրիլ)։
— Քէյքաւուզ սուլտան առնու զբերդն Լուլուայ, զոր յետոյ թափէ Լեւոն։
1215 Լեւոն վերահաստատէ զդաշինս վաճառականութեան Գենուացւոց (մարտ 15)։
— Ծն. Հեթում (Ա) որդի Կոստանդնի Պայլի։
1215-6 Ծն. Զապել դուստր և ժառանգ Լեւոնի։ 512
1216 Լեւոն երրորդ անգամ առնու զԱնտիոք (14 փետր.), և մեծաւ փառօք հաստատէ զՌուբէն յաթոռն։ 502
1217 — Փոխանակ Ռուբինի ժառանգ կարգէ զդուստր իւր Զապել։ 512
— — Երթայ 'ի Պտղոմայիս յողջոյն նորեկ խաչակրաց և յօգնութիւն։ 512
— Սուլտանն Իկոնիոնի պաշարէ զԿապան, և 'ի մարտին գերէ զիշխանս Հայոց։ 519-21
1217 Լեւոն ասպատակ սփռեալ 'ի սահմանս սուլտանին՝ յետս դարձուցանէ զնա։ 521
1218 — Առաքէ գունդ օգնական խաչակրաց 'ի պաշարումն Թաբորի։
— Անդրէաս թագաւոր Ունգարաց գայ 'ի Սիսուան։ Խնամախօսութիւն որդւոյ նորա ընդ Զապելի։ 513
— Յովհաննէս կաթողիկոս տայ Լեւոնի զՀռոմկլայ և առնու փոխանակ զԴիրաշարկ։ 232
1219 Լեւոն տուեալ փրկանս՝ գերեթափ առնէ զիշխանս իւր։ 521
— — Պայլս կարգէ Զապելի՝ զՍիր Ատան և զԿոստանդին որդի քեռւոյ իւրոյ։ 313. 484
— † Լեւոն (2 մայիսի)։ Վէճ վասն տեղւոյ թաղմանն։ 525
1220 Յովհան Պրիեն դիմէ 'ի Սիսուան. այլ 'ի մեռանել կնոջն (Ռիթա) և որդեկին՝ դառնայ յետս։ 525
1220 Ոնորիոս Գ գրէ առ Յովհաննէս Պրիեն չմտել 'ի տէրութիւն Հայոց (օգոստ. 11)։ 525
— Ռուբէն-Ռեմունդ գտեալ կուսակիցս՝ նկրտի կորզել զթագ Լեւոնի։ 525
— — Պարտեալ, գերեալ և բանտարկեալ † (1222)։ 526
— † Յովհաննէս կաթողիկոս։ — Յաջորդէ Կոստանդին Ա Բարձրբերդցի։ 527
1222 Փիլիպ որդի Դ Պեմունդի փեսայացեալ Զապելի՝ թագ կապէ։ 527
1225 — Անհաւատարիմ գտեալ խոստմանցն, արկանի 'ի բանտ, ուր և †։ 527
1226 Հեթում որդի Կոստանդեայ Պայլի պսակի և թագի ընդ Զապելի (14 յունիս)։ 528
— — Երթայ առ ամիրապետն Տահէր 'ի դաշնադրութիւն։
— — Տայ թարգմանել զգիրս արուեստից յարաբ կամ 'ի պարսիկ լեզուէ։
— Ոնորիոս Գ գրէ առ Կոստանդին արքայահայր վասն արքեպիսկոպոսին Տարսոնի (յուլիս 29)։
1226-7 Հեթում արշաւէ 'ի սահմանս սուլտանին Իկոնիոնի։
1227 — Հիմնարկէ զՍ. Սոփիա արքունական եկեղ. 'ի Սիս։ 222
1228 — Նորոգէ զպարիսպս Տարսոնի։ 270
— Ալայէտտին սուլտան առնու զՓեռամանիկն և զԱլայա։ 290
— Կոստանդին Լամբրոնեցի նիզակակցի սուլտանին ընդդէմ Հայոց։
1232 Կայսերական զօրք պարտեալք 'ի Կիպրոս՝ գան 'ի ծառայութիւն Հեթմոյ։
1233 Կոստանդին Լամբրոնեցի տայ ասպետաց Հիւանդանոցին զԿովառա բերդ։ 84
1234 Ալայէտտին շինէ զԱլայա (Կորակեսիոն)։ 313
— Ալիծ դուստր Բ Ռուբինի՝ հաստատէ զտուրս մայրենի հաւուն իւրոյ՝ 'ի Ս. Ղազար գօգենոց Երուսաղեմի (նոյ. 7)։
1235 Սուլտանն Հալպայ փորձէ այլ չկարէ առնուլ զՊաղրաս։
1236 Հեթում արձանագրէ 'ի պարիսպս Սելեւկիոյ։
— — Պարգեւէ հրովարտակաւ Տեւտոնեան ասպետաց զՀարուն բերդ (22 յանուար)։ 207

1236 Ծիրանածին Լեւոն (Բ) անդրանիկ Հեթմոյ։

1237 Գրիգոր Թ գրէ առ Հեթում և առ հայրն, չնեղել զԿոստանդին Լամբրունեցի (յունուար 19)։

— Ալայէտտին առաքէ առ Հեթում 'ի պահ՝ զմայր իւր և զքոյր, զորս Կոստանդին Պայլ մատնէ Թաթարաց։

— — Նոյն պատրաստեալ 'ի վրէժ՝ դաւաճանի յիւրայոցն։

1238 Կոստանդին կաթողիկոս ընդ կաթողիկոսին Ասորւոց երթայ յԵրուսաղէմ յուխտ։

— Պատրիարքն Անտիոքայ ջանայ ընդ իշխանութեամբ իւրով արկանել զկաթողիկոսն Հայոց։

— Հեթում և Զապել յարդարեն հովանոց յԱնդուլ։ 230

1239 Գրիգոր Թ առ Հեթում, շնորհելով ներողութիւն պատերազմողաց ընդ այլազգիս (մարտ 1)։

— Գրիգոր Թ առաքէ առ Կոստանդին կաթողիկոս թուղթ և ընծայս (մարտ 10)։

— Գերմանոս պատրիարք Կ. Պօլսի բանագնաց լինի ընդ Հայս վասն միաբանութեան եկեղեցւոյ։

1241 Զապել դշխոյ շինէ զՀիւանդանոցն Սսոյ, և սպաս տանի հիւանդաց։ 223

1243 Սիմոն երէց աւարի դեսպան ղանին Թաթարաց առ Հեթում։

— Կոստանդին Պայլ երթայ 'ի Կեսարիա վասն դաշնակցութեան ընդ սուլտանին։

— Հեթում դրամ հատանէ յանուն իւր և սուլտանին։

1243-4 Իսա բժիշկ Եդեսիացի խնդրէ և տայ շինել եկեղեցի վասն Ասորւոց՝ 'ի Սիս։

1244 Թաթարք հարկանեն զսուլտանն Իկոնիոնի 'ի սահմանս Երզնկայ։

— Հեթում դեսպան հպատակութեան առաքէ առ Պաճու Նոյին յաղթողն սուլտանին։

1245 Սուլտանն առնու զՊռականա 'ի Հայոց, օգնականութեամբ Կոստանդնի Լամբրունեցւոյ։ 73. 84

— Հեթում վերահաստատէ զդաշն վաճառականութեան Վենետաց։

1246 Հալպ հալածեն զապստամբս սուլտանին 'ի կողմանս Կուկլակայ։ 130

— Ալայէտտին հակառակորդն Հեթմոյ մեռանի յԱլայա (Կալոնօռոս)։ 314

— Իննովկենտ. Դ նուիրակ առաքէ (զԼաւրենտ) վասն կրօնական խնդրոց. պատասխանէ կաթողիկոսն. (յունիս 5 և օգոստոս 6)։

1246-7 — Այլ նուիրակ Տիմանջ անուն՝ վասն խնդրոյ Բղխման Հոգւոյն Սրբոյ։

1247 Հեթում թափէ 'ի սուլտանէն զՊռականա բերդ։ 331

— — Առաքէ զեղբայր իւր Սմբատ Գունդստապլ առ Ղանն Թաթարաց։

1247-8 Սմբատ գրէ առ քեռայր իւր՝ թագաւորն Կիպրոսի՝ 'ի Սմըրղանտէ։

1248 Մանուէլ Բ պատրիարք Կ. Պօլսի գրէ առ Հեթում վասն միաբանութեան հաւատոյ։

1249 Հեթում օգնութեամբ Թաթարաց վանէ զԻկոնիացիս, և զվրան սուլտանին (500 ոսկւոյ արժէից) ընծայէ Ս. Լուդվիկի։

— Բազում ասպետք փռանկք յարին 'ի Հեթում, սխրացեալք ընդ գործս քաջութեանն։

1249-50 Հակառակութիւնք Հայոց և Անտիոքեցւոց։

— Ս. Լուդվիկ միջնորդէ 'ի հաշտութիւն Հեթմոյ ընդ Պեմունդի Ե։

1250 Կոստանդին տէր Լամբրունի սպանանի վասն ապստամբութեանն և մատնութեանց։

1251 Հեթում խօսի զդուստր իւր Զիմէ 'ի կնութիւն Ցուլիանու տեառն Սիդոնի։ 482

1252 † Զապել թագուհի (22 յանուար). թաղի 'ի Դրազարկ։ 232

1253 † Իգնատիոս կաթողիկոս Ասորւոց (14 յունիս). կտակեալ զՀորի իւր և 200 ոսկի դենար առ Հեթում։

— Մարկոս Ծիանի դքսորդի՝ ծանօթ Սիսուանեայց՝ պարգևէ նոցա տուն մի 'ի Վենետիկ։

1254 Սիպիլ դուստր Հեթմոյ պսակի ընդ Պեմունդի Զ։

— Երթ Հեթմոյ 'ի Թաթարս։ Երգ եղբօր նորա Ցովհաննու՝ յայս դէպս։

— Հեթում պատուեալ 'ի դրան ղանին, ընդունի բազում շնորհըս վասն քրիստոնէից։ 174

— — Գրէ զայսցանէ առ հայր իւր, որ տայ տօն խնդութեան կատարել։

1255 Ցուլիան փեսայ Հեթմոյ վաճառէ ասպետաց զկալուածս իւր

— Բիւպրուք հաշակաւոր ճանապարհագիր՝ պատուի յարքունիս Հայոց։

— Հեթում Նիզակակցի Հուլաղու ղանի։ 174

1256 — Մտանէ 'ի սահմանս թագաւորութեան իւրոյ մեծաւ հանդիսիւ (3 յունիս)։

— — Գայ 'ի Բարձրբերդ առ հայր իւր (սեպտեմբեր)։ 148

— — Աշխարհաժողով արարեալ արշաւէ 'ի կողմանս Աւակլեայ (հոկտեմբեր)։ 174

— — Առաքէ 'ի գործ մարտի առ Հուլաղու 12,000 հեծեալ, 40,000 հետեւակ։

— — Յորդորէ 'ի նիզակակցութիւն զդստրայրն՝ Պեմունդ Զ։

— — Զիւարեցուցանէ մեծաւ հանդիսիւ զանդրանիկ իւր Լեւոն Բ (15 նոյեմբեր)։ 248

— Շինութիւն եկեղեցւոյն Պապեռօնի։

1257 Սուլտանն Իկոնիոնի տայ Գարաման Թուրքի զԷրմէնէկ։ 259

1258 Օշին արքայեղբայր աւարտէ զշինութիւն Կոռիկոսի։ 334

— † Լեւոն մարաջախտ արքայեղբայր։ 74

— Սարում Թուրքման ապստակէ 'ի Կրակս։ 36

1259 Գարամանք պաշարեն զՄանիօն բերդ։ 293

— Հեթում երթայ 'ի Տրապօլիս հաշտեցուցանել զփեսայ իւր Պեմունդ Զ ընդ իշխանաց նորին։

— — Առնու զՄունգաս բերդ։ 177

— Ի տօնի Հոգեգալստեան Ցովհաննէս արքայեղբայր ձեռնադրի եպիսկոպոս (23 մայիս)։ 144

— Զիւարի Թորոս՝ երկրորդ որդի Հեթմոյ։ 486

— Հեթում երթայ յՈւռհա առ Հուլաղու, վասն նուաճման Բերիոյ։

1260 — Ժառանգէ զԲերիա, մասամբ աւարին (24 յանուար)։ Եղբայր Կոստանդնի կաթողիկոսի ազատէ զմասն մի գերեացն։

1261 — Գժտի ընդ Ցուլիանու դատրառնն՝ վասն վաճառելոյ նորա զերկիր իւր՝ Տաճարական ասպետաց (ապրիլ)։

— — Տայ Վենետաց նոր պարգևագիր վաճառականութեան, յորում յիշի Այաս։ 338

— — Փեսայացուցանէ 'ի դուստր իւր Ռիթա զԿոստանդին ժառանգ Սարուանդիքարի։ 201

1262 — Վանէ զԳարամանս, և զերծուցանէ զՄանիօն բերդ։ 196.293

— — Օգնութեամբ Թաթարաց զերծուցանէ զԱնտիոք յԵգիպտացւոց (յուլիս)։

— † Ճօֆրէ տէր Սարուանդիքարի։

— Լեւոն Բ կին առնէ զԿիռ Աննա դուստր Հեթմոյ Լամբրոն.։

1262-3 Հեթում արշաւէ յԱնթապ։

1263 Թաթարք իրաւախոհ լինին ընդ Հեթում և ընդ սուլտանն Իկոնիոնի։

— Հեթում դիմէ 'ի վերայ զօրաց Պիպարսայ և ընկրկի։

— † Կոստանդին արքայահայր (24 փետր.)։

— Ծն. Զապլուն անդրանիկ Լեւոնի Բ։

— † Մարիամ (Կիռա Մարի) քոյր Հեթմոյ, կոմսուհի Ցոպպէի։ 85

— Հեթում երթայ յԱնտիոք՝ յուխտ և 'ի միսիթարութիւն։

— — Օգնութեամբ 700 Թաթարաց արշաւէ 'ի Սարեփթա և Հերակլիա, և յետս ընկրկի։

— — Երթայ 'ի Դավրէժ 'ի ժողով Հուլաղուի (յունիս)։

— — Ապստակէ 'ի կողմանս Բերիոյ (Մարին, Սմրին, և այլն) և դառնայ աւարաւ։

— — Երկիցս երթայ 'ի վերայ Անթապայ (ձմերանի), այլ ոչ յաջողի։

1264 Գրիգոր Ապուլֆարաճ հաշակաւոր մատենագիր ընտրի

մաֆրեան Ասորւոց 'ի Սիս¹ (յունուար 6)։ 225
1264 Օշին արքայեղբայր առաքի յԱբքեա ընդ առաջ լեկաթի Պապին։
— Պարոն Թովմաս և Մխիթար Սկեւռացի գնացան առաջին առ նոյն։ Վիճաբանութիւն կրօնական․ զօրէ գրէ յետոյ Մխիթար։ 102
— Ծն․ Կոստանդին անդրանիկ արու Լեւոնի Բ (յունուար)․ մկրտի ձեռամբ յաւուր Ջատկին։
— Ցայնմ աւուր ձիաւորին որդիք Սմբատայ Գունդստաբլի։
— Կլեմէս Դ գրէ առ Հեթում յօգնութիւն քրիստոնէից։
— Սմբատ Գունդստաբլ յօրինէ զԴատաստանագիրսն։ 71
— Պիպարս գիմէ 'ի սահմանս Հայոց, և դառնայ յետս։ 435
— † Օշին արքայեղբայր տէր Կոռիկոսի (դեկտ․ 26)։ 193. 528
1266 Ծն․ Հեթում Բ, որդի Լեւոնի Բ։
— Մարիամ դուստր Հեթմոյ Ամպակի ընդ Կի Իպլինեան։ 371
— Հեթում առնու զՄարաշ քաղաք։
— — Գնէ զԲեհեսնի 100,000 ոսկի դրամից։
— — Առաքէ օգնութիւն Անտիոքացւոց ընդդէմ Պիպարսայ։
— — Երթայ առ զօրավարն Թաթարաց 'ի խնդիր օգնութեան ընդդէմ Պիպարսայ։ 401
— Մուտք զօրաց Պիպարսայ 'ի սահմանս Հայոց (օգոստ․ 8)։ 401
— Պատերազմն Մառեայ․ † Թորոսի արքայորդւոյ․ գերութիւն Լեւոնի։ 401
— Աւեր Սսոյ։ Սուգ Հեթմոյ։ — Թուղթ առ Քահանայապետն զերացս։
— Եգիպտացիք պաշարեն այլ ոչ կարեն առնուլ զՍարուանդիքար։ 209
1267 Հեթում 'ի տունի Ցայտնութեան 'ի Մսիս․ առաջարկ գերեթափութեան Լեւոնի։ 248
— † Կոստանդին կաթողիկոս (9 ապրիլ)։
— Հեթում գնացեալ առաքէ 'ի Սաֆեդ առ Պիպարս՝ վասն ազատութեան Լեւոնի (մայիս)։
— — Խնդրէ յԱպաղայ ղանէ զՍօնգուր աւրեւլն Պիպարսայ, փոխանակ Լեւոնի։
— Կլեմէս Դ գրէ մխիթարութիւն առ Հեթում (մայիս 17)։
— Նոյն գրէ առ Երուսաղեմացիս օգնել Հայոց (յունիս 17)։
1268 Յակոբ Կլայեցի կարգի կաթողիկոս (փետր․ 12)։ 196. 249
— Հեթում 'ի Դամասկոս երդնու թողուլ 'ի Պիպարս զբերդսն զոր խնդրէր։
— — Ծանուցանէ Պիպարսայ՝ զի գայ գնացեալ 'ի ղանէն։
— Պիպարս առաքէ 'ի Սիս զՆաարէտտին՝ ընդունել զգերեալն։
— — Առնու զԱնտիոք (մայիս 18). և անդ կնքէ զդաշն հաշտութեան ընդ Հեթմոյ։
— Արձակի Լեւոն 'ի Դամասկոսէ յազատութիւն (յունիս 24)։
— Հեթում երթայ առ Ապաղայ ղան 'ի շնորհակալութիւն, և 'ի հրաժեշտ թագաւորութեանն։
— Գենուացիք ըմբռնեն նաւ մի վաճառաբարձ 'ի Կոռիկոս, վասն որոյ վէճք։ 341
1269 Հեթում հրաժարեալ 'ի թագաւորութենէ՝ առաքէ զԼեւոն առ Ապաղա։
— Մեծ սաստկութիւն երկրի 'ի Կիլիկիա։
— Ծն․ Սեպիլ դուստր Լեւոնի, (վաղամեռիկ)։
— Կիրակոս Արեւելցի (Պատմիչն) աւարտէ զՅայսմաւուրսն 'ի Սիս։ 224
— Ապաղա ղան գրէ առ արեւմտեայս զօրաժողով լինել 'ի Հայս, ընդդէմ Եգիպտացւոց։
1270 Հեթում խոպառ հրաժարեալ յարքունեաց (20 հոկտ․) կրօնաւորի Մակար կոչմամբ։ 134. 232
— † Հեթում—Մակար (28 հոկտեմբ.)։ Սուլտանն Եգիպտոսի գրէ մխիթարութիւն առ Լեւոն։ 154
— † Հեթում որդի Սմբատայ Գունդստաբլի (յուլիս 15)։ 72
— † Վասիլ Թաթար որդի նորին Սմբատայ (սեպտ․ 29)։ 74
1271 Լեւոն Բ թագ կապէ․ և եղանէ յայց սահմանաց տէրութեանն։ 270
1271 Լեւոն վերահաստատէ զդաշինս վաճառականութեան ընդ Վենետաց (յանուար)։ 262
— Պնտուխտար արշաւէ 'ի կողմանս Մարաշայ և Բեհեսնոյ։
— Լեւոն հրեշտակս արձակեալ չտայ նմա թոյլ մտանել յերկիր իւր։
— — Տայ շինել ամրոց 'ի Խողձոր։ 131
— Դաւ Ցոյն պարոնայց ընդդէմ Լեւոնի, և պատուհաս։ 142
— Դաշինք Կոստանդնի տեառն Սարուանդիքարի ընդ Տեւտոնեան ասպետաց (յունիս 15)։ 209
— Լեւոն սատարէ 'ի շինութիւն պարապաց Հրեշտակապետի վանաց յԵրուսաղէմ։
— Ծն․ Թորոս արքայորդի։
— Մարկոս Պօղոս (Marco Polo) յԱյաս․ հայկական նաւու առաքի յԱքքեա։ 339
1272 † Կիրակոս վարդապետ Արեւելցի (յանուար)։
— Սմբատ Գունդստաբլ երթայ առ Աբղուն ղան։
1273 Գրիգոր Ժ գրէ հրաւէր առ թագաւորն և առ կաթողիկոս, գալ 'ի ժողով Լուգդոնի։
— Կուտակն Բեհեսնոյ արշաւեալ 'ի կողմանս Տարօնի՝ առնու զՔենուկ (կամ Գընիկ) բերդ (յուլիս)։
1274 Ապաղա ղան գրէ առ Լեւոն յորդորել զարեւմտեայս ընդդէմ Եգիպտացւոց։
— Լեւոն առաքէ գեսպանս, և նուիրակս 'ի ժողով Լուգդոնի։
— Սուլտանս Փիլիպպոս ուսուցիչ լատին լեզուի յԱյաս։ 366
— Վճիռ պետութեան Վենետկոյ վասն բամբակի գնելոյ յԱյաս։ 369
1275 Պիպարս մեկնի 'ի Գահիրէէ՝ դիմել 'ի Հայս (փետր․ 1)։
— Մեծ արշաւ Եգիպտացւոց, աւեր և կոտորած 'ի Սիսուան․ յետոյ սրածութիւն (մարտ)։ 225
— Քաջութիւն երիցու միոյ։ 225
— Եգիպտացիք աւերեն զկամուրջն Մսսայ, և այրեն զՍ․ Սոփիա եկեղեցի Տարօնի։ 249
— † Պեմունդ Զ քեռայր Լեւոնի։ Սա ձիաւորէ զՊեմունդ Է։
— † Բարսեղ արքեպիսկոպոս հօրեղբայր Լեւոնի․ թաղի 'ի Դրազարկ։ 232
— † Յուլիան տէր Սիդոնի․ այրին՝ Ֆիմէ՝ քոյր Լեւոնի կրօնաւորի։
— Նորոգութիւն Սսոյ, և Պաքսիմատի վանաց Ասորւոց։ 222
1276 Եգիպտացիք արշաւեն 'ի Սիսուան և վանին 'ի Հայոց։ 225
— Սմբատ Գունդստաբլ վիրաւորեալ † (մարտ)։ 72
— Ծն․ Սմբատ և Ջաւպել խեղեփք, որդիք Լեւոնի Բ։
1277 Պիպարս հարկանէ զԹաթարս 'ի կողմանս Ալպստանայ (ապրիլ 15)։
— — Մեռանի 'ի Դամասկոս (յունիս 30)։
— Լեւոն ընդ Թաթարաց արշաւէ 'ի Բեհեսն և յԵգիպտոս։
— Ծն․ Կոստանդին — Ռուբէն որդի Լեւոնի Բ։
1278 Վահրամ դեսպան Լեւոնի 'ի Սիկիլիա և 'ի Նէապօլիս։ 363 ծ.
— Կարոլոս թագաւոր Սիկիլիոյ գրէ առ միաբանս՝ թողուլ ազատ անցս Վահրամայ (փետր․ 1. 6)։
— Ապաղա ղան տայ Լեւոնի զերկիր սուլտանին Հոռոմոց․ սա ոչ ընդունի։
— Ծն․ Ռիթա և Ստեփանիա խեղեփք, դստերք Լեւոնի Բ։
1279 Եգիպտացիք պաշարեն զՀռոմկլայ։
— Թուրքք այրեն զԱկեւռա։ 107
— Ալֆի ամարէկ եգիպտացի պաշարեալ զԱնազարբա՝ հալածի 'ի Հայոց։
— Ծն․ Ներսէս որդի Լեւոնի Բ․ (յետոյ քահանայ եղբօրն)։
— Վասակ դեսպան Լեւոնի 'ի Սիկիլիա։ 363 ծ.
— Շնորհէ սմա թագաւորն Սիկիլիոյ ազատ նաւարկութիւն (մարտ 20)։
— Լեւոն առաքէ 'ի հազեստուն Հայոց 'ի Պերուճիա՝ զճաշոց գիրս։ 519
1280 — Նորոգէ զեկեղեցիս Սսոյ (Ս․ Հոգի, Ս․ Սիմոն)։
— — Օգնութեամբ Թաթարաց վանէ զԵգիպտացիս 'ի Պաղրաս։

¹ Ձանձնախօսութիւն նորա 'ի բանն՝ « Դու ամենայն գիս » [illegible] թարգմանէ 'ի հայ՝ Թէոդորոս Սմբրեանց Սանցի, ըստ վկայութեան նորին Նալուլբանեանց պատմի։

1280 Հայք Նիզակակցութեամբ Թաթարաց հարկանեն զԵգիպտացիս յԷմեսա.ապա Եգիպտացիք յաղթեն (հոկտ. 29):
1281 Թուրքմանք ասպատակեն յԱյաս. կոտորեն 'ի Հայոց:
— Ծն. Ստեփանէ որդի Լեւոնի Բ:
1282 Դաշինք Լեւոնի ընդ սուլտանին Եգիպտոսի: 164
— Լեւոն միաբանի Տաթէոյ ուխտին, առաքելով Նուէրս:
— Գուլիելմոս և այլ դեսպանք Լեւոնի 'ի Նէապօլիս: 363 ծ.
1283 Ծն. Օշին և Ալինախ, խեղեփք, որդիք Լեւոնի Բ:
— Ասպատակ Եգիպտացւոց առ Դրամբ Աղեքսանդրեկի, վանելով զՀայս:
— Լեւոն ասպատակէ 'ի կողմանս Գամրաց, և դառնայ աւարաւ:
— Գէորգ Սկեւռացի յօրինէ Դրուատ 'ի Ս. Յովհ. Աւետարանիչ: 104
1284 Պուրքարտ քարոզիչ ուղէգիր՝ կայ յարքունիս Լեւոնի ամօրեայ աւուրքք: 224
— Ասպատակ Թուրքաց յԱյաս, և դարձ 'ի նմին աւուր:
— Անամօռ Թափի 'ի Թուրքաց: 322
— Լեւոն երթայ առ Արղուն ղան:
— — Ի խնդրոյ սուլտանին արձակէ զգերութիւն Գարամանաց ըմբռնելոց 'ի կողմանս Տարսոնի:
— Հեթում և Թորոս արքայորդիք ձիաւորին: Յովհ. Եզընկացի ատենաբանէ: 224
1285 † Պարոն Վասակ հօրեղբայր Լեւոնի Բ:
— Քէլաւուն սուլտան նորոգէ զդաշն հաշտութեան ընդ Լեւոնի, պահանջելով հարկ 500,000 դրամ (մայիս): 384
— † Կեռան (Կիռ Աննա) Թագուհի. Թաղի 'ի Դրազարկ. առ նմին և քոյր իւր Մարիւն, և Ֆիմէ (օգոստ. 9): 484
1286 Կոստանդին Պրօնագործ ընտրի կաթողիկոս: Զեռնադրէ զՍտեփանոս Օրպելեան եպիսկոպոս Սիւնեաց: 152
— Թորոս արքայորդի կին առնէ զՄարգարիտ՝ դուստր Հիւկ Թագաւորի Կիպրոսի:
– Ոնորիոս Դ գրէ առ եպիսկոպոսն Անտարատոսի քննել զխնամութիւն նոցա (մայիս 23):
1287 Ստեփանոս երէց գրէ Տօմարագիտութիւն վասն Հեթմոյ տեառն Կոռիկոսի: 337
— † Պեմունդ Է (հոկտ. 19): փոխանակ քեռ նորա Լուկիայ՝ կինն Սիպիլ քոյր Լեւոնի կարգի ժառանգ իշխանութեան Տրիպօլսի. 'ի վիճել նոցա՝ Քէլաւուն առնու զքաղաքն (1289):
1288 Լեւոն նորոգէ զդաշինս վաճառականութեան Գենուացւոց (դեկտ. 23): 387
— Նիկոլ. Դ գրէ քաջալեր առ Լեւոն, որ յորդորէր զՊապն դառնալ 'ի Հռովմ՝ յԱւինիոնէ (հոկտ. 1):
1289 Ծն. Լեւոն Գ որդի Թորոսի:
— † Լեւոն Բ (փետրուար 6):
— Հեթում Բ յաջորդէ, այլ ոչ կամի կապել Թագ:
— — Հաստատէ զդաշն հաշտութեան ընդ Քէլաւունի. որ պահանջէ հարկս և զքաղաքսն Բեհեսնի և Մարաշ:
— Նիկոլ. Դ առ Հեթում Բ. յորդորական. նոյնպէս և առ իշխանս Հայոց (յուլ. 14):
— Հեթում վերահաստատէ զպարգեւագիր վաճառականութեան Գենուացւոց: 362
— † Յովհաննէս Բաբուն արքայեղբայր (Ա Հեթմոյ):
1290 Հեթում փոխանակ Կոստանդնի կաթողիկոսի կարգէ զՍտեփանոս:
— Ասպատակ Եգիպտացւոց, զորս վանեն Հայք:
— Գէորգ Սկեւռացի գրէ զՄեկնութիւն Եսայեայ 'ի խնդրոյ Հեթմոյ Բ: 103
1291 Պնտուխտար սուլտան 'ի դիմել 'ի վերայ Հայոց՝ խոցեալ մեռանի:
— Յաջորդ նորա Մելիք Աշրաֆ առեալ զԱքքեա (15 մայիս), գրէ յոխորտանօք առ Հեթում:
— Հեթում ծանուցանէ զայս թղթով և դեսպանօք առ Եդուարդ Թագաւոր Անգղիոյ (15 յունիս):
— Եգիպտացիք արշաւեն 'ի կողմանս Մոլեւոնի: 142
1292 Թղթակցութիւն Հեթմոյ ընդ Նիկոլայոսի Դ Պապի գիրացս:
— Պատուիրէ Պապն զինել բերդանաւս քանի՝ 'ի պաշտպանութիւն Հայոց և Կիպրացւոց:
— Նոյն առ Թագաւորս Փռանկաց և Անգղիոյ՝ յօգնութիւն Հայոց:- Նոյնպէս և առ ամենայն հաւատացեալս (յուն. 23):
— Առումն Հռոմկլայի յԵգիպտացւոց: Գերութիւն կաթողիկոսին և սպասուց (յուլիս 28):
— Հեթում քննութիւն առնէ վասն Ծառզատկի, և գրէ չափաւ բան:
1293 Գրիգոր Անաւարզեցի կարգի կաթողիկոս 'ի Սիս: 218
— — Գրէ զԴրուատ յԱմենայն Սուրբս: 241
— Նշխարանոցն Սկեւռայ 'ի Կոստանդեայ կաթողիկոսէ: 106
— Հեթում հաստատէ զիգնատիոս Միքայէլ կաթողիկոս Ասորւոց՝ ընտրեալ 'ի Սիս: 221
— — Պատուէ զՅովհաննէս Եզնկացի եկեալն 'ի Սիս:
— Անդ գրէ սա զՅիշատակարան Մեկնութեան Քերականին, և ընծայէ առ Հեթում:
— Հեթում փեսայացուցանէ 'ի քոյր իւր Զապլուն՝ զԱմաւրի եղբայր Թագաւորին Կիպրոսի:
— — Թողու դաշամբք 'ի սուլտանն՝ զՄարաշ և զԲեհեսնի:
— — Փոխանակ իւր կարգեալ զԹորոս, կրօնաւորի առ Փռանկիսկեանս, Յովհաննէս կոչմամբ:
— — Շնորհէ Կատալանաց (Սպանիոյ) իրաւունս վաճառականութեան:
— Նաւամարտ Վենետաց և Գենուացւոց յԱյաս:
1294 Ոմանք յիշխանացն դաւաճանել կամին զՀեթում: 194
— Բժշկարան գրեալ վասն Հեթմոյ տեառն Կոռիկոսի: 337
— Հեթում առաքէ զքոյր իւր Ռիթա 'ի հարսնութիւն Միքայէլի որդւոյ կայսեր Բիւզանդիոնի:
— Միւս քոյրն Թեֆանոյ խօսեցեալ Յովհ. Անգելոսի †. և Թաղի 'ի Թեսաղոնիկէ: 371
— † Օշին մարաջախտ Լամբրոնեցի:
— Բարձումն սուլտանութեան իկոնիոնի. և հաստատութիւն մանր իշխանութեանց Թուրքաց, շուրջ զսահմանօք Սիսուանայ:
— Բերդանաւք Վենետաց կողոպտեն նաւ մի վաճառաբարձ 'ի Կոռիկոս: 342. 365
1295 Նոյնք կողոպտեն նաւ մի մարսիլեացի յԱյաս:
— Հեթում շինէ զեկեղեցին Մասայ:
— — Երթեալ առ Ղազան ղան՝ տայ արգելուլ զաւեր եկեղեցեաց:
— — Հրաժարեալ 'ի ղանէն՝ յուղի անկանի դառնալ յաշխարհ իւր (հոկտ. 19):
1296 † Մարգարիտա կին Թորոսի եղբօր Հեթմոյ:
— Հեթում ընդ Թորոսի երթայ 'ի Կ. Պօլիս, ուր միջնորդ լինի հաշտութեան Վենետաց և Գենուացւոց:
— Սմբատ եղբայր նոցա Թագ կապէ մեծաւ հանդիսիւ: 225
— — Երթայ առ Ղազան ղան՝ հաստատել զԹագաւորութիւնն, և առնէ կին Թաթար:
— Հեթում տէրն Կոռիկոսի գրէ զժամանակագրութիւն իւր: 337
1297 Սմբատ ըմբռնէ զապստամբս ոմանս 'ի Թաթարաց և առաքէ առ ղան նոցին:
1297—8— Տայ գնել ոսկեդիպակս 'ի Վենետիկ, վասն ընծայելոյ սուլտանին:
1298 Եգիպտացիք ասպատակեն, և առնուն զՆէճիմ բերդ. (ապրիլ, մայիս):
— Սմբատ ծանուցանէ թղթով և դեսպանօք առ Պապն և առ Թագաւոր Անգղիոյ զվտանգ երկրին:
— Գրիգոր Անաւարզեցի գրէ առ Սմբատ զկրօնական խնդրոց:
— Սմբատ խեղդամահ առնէ զԹորոս. խաւարեցուցանէ զաչս Հեթմոյ (յուլ. 23): 142
— Վոնիփակ. Ը գրէ առ Սմբատ խրախոյս ընդդէմ այլազգեաց (հոկտ. 5):
— Նոյն առ Գր. Անաւարզեցի (հոկտ. 26):
— Նոյն առ Սմբատ և առ Թագաւորս Փռանկաց և Անգղիոյ (նոյեմ. 3):
— Թուղթ Եդուարդայ Ա առ Սմբատ՝ վասն դեսպանացն (դեկտ.):

1298 Կոստանդին մերժէ զեղբայր իւր Սմբատ և գահակալէ։ 142

— — Թողու յԵգիպտացւոց զՀամուս և զայլ ևս բերդս։

1299 Հայք օգնութեամբ Թաթարաց վանեն զԵգիպտացիս. և կորզեն զբերդսն զոր թողեալ էին (մայիս)։

— Հեթում օգնութեամբ Հիւանդանոցի ասպետացն առնու զԲղգաշն. աքսորէ զԿոստանդին և զՍմբատ։

— Վենետիք քանդեն զփնդուկ մի Գենուացւոց յԱյաս։

— † Տէր Օշին Պայլոնց յԵգիպտոս։

— Թաթարք և Հայք խորտակեն զԵգիպտացիս յԵմեսիա (դեկտ. 23)։

1300 Հայք յաւար և 'ի սուր մատնեն զԱպլէհաթ կամ Մելահիէ քաղաք (յունուար 9)։

— — Նուաճեն վերստին զԹիլն Համտընոյ։

— — Պաշարեալ զբերդ Դամասկոսի՝ առեր ածեն (փետր. 13)։

— Հեթում հալածէ զԵգիպտացիս մինչև 'ի Տօլէ?, նշան յաղթութեան թողեալ սուսերաւն։

— — Մտանէ յաղթողաբար յԵրուսաղէմ, կատարէ զտօն Ցայտնութեան (1301)։

— † Գէորգ Սկեւռացի։ 104

— Ռոսիմոնոս Լուլլիոս բանաւէր քարոզէ 'ի Հայս և 'ի Կիպրոս։ 393

1301 Երկրորդ արշաւանք Թաթարաց և Հայոց յԱսորիս, բազում գերութեամբ (յանուար)։

— Վասն սաստկութեան ձմերայնոյ Ղազան ղան մեկնի յԱսորւոց. դարձ առնէ և Հեթում (փետր. 5)։

— Հեթում թագաւորեցուցանէ զԼեւոն, որդի Թորոսի, կին առեալ նմա զԱգնէս — Մարիամ, դուստր քեռ իւրոյ Ջապլոնի և Ամաւրեայ։

— — Կալեալ զԱլայէտոյն սուլտանն ապստամբ՝ տանի առ Ղազան ղան։

— — Ինքն հրաժարեալ վերստին կրօնաւորի։

— † Ներսէս քահանայ եղբայրն Հեթմոյ (26 մայիսի)։ 517

— Ղազան ղան գրէ առ Նասր սուլտան Եգիպտոսի վասն հաշտութեան (օգոստոս)։

— Նասր զանգատի վասն մանկելոյն զգերեալսն՝ 'ի ձեռս Հայոց, զորս աղքա վաճառեալ էին 'ի կղզիս (հոկտ. 5)։

— Դեսպանք Նասրի առ Ղազան՝ յերկրին Առանայ 'ի Մեծ Հայս (դեկտ. 19)։

1302 Եգիպտացիք ասպատակեն 'ի Սիսուան՝ 'ի վրէժ, և դառնան գերութեամբ։

— Սով 'ի Կիլիկիա։

1303 Թաթարք և Հայք բաղխին ընդ Եգիպտացիս առ Դամասկոսիւ. նախ յաղթեն, ապա յաղթին (ապրիլ 20-21)։

— Հեթում երթայ առ ղանն 'ի գանգատ, և ընդունի 1000 այր յօգնութիւն։

1304 — Երթայ առ Խարբանտա ղան՝ 'ի գահակալել սորա։

— Պէարէտոյն Պէկդաշ զօրավար Եգիպտացւոց առնու դարձեալ զԹիլն Համտընոյ (յունիս 17)։ 206

1305 Գարա Սօնղուր կուսակալ Հալպայ ասպատակէ 'ի Սիսուան և հալածի։

— Եգիպտացիք 8000 հեծելովք արշաւեն 'ի Հայս։

— Հայք դարանեալք 'ի կիրճս՝ կոտորեն 7000 յԵգիպտացւոց (յուլիս 18)։ 389

— Հեթում 'ի չքմեղս եղեալ՝ հաճեցուցանէ զսուլտանն 'ի հաշտութիւն։ 389

— — Դարձեալ հրաժարեալ առանձնանայ 'ի վանս։

— Հրաժարէ և Հեթում տէր Կոռիկոսի, 'ի վանս Փռանկաց 'ի Կիպրոս, կոչի Անտոն։ 339

1306 Ամաւրի մերժեալ զեղբայր իւր Ենրիկ թագաւոր Կիպրոսի՝ առաքէ 'ի Հայս՝ յարգելան։ 85

— Ասպատակ Եգիպտացւոց. 'ի դարձին հարկանեն զնոսա Հայք և Թաթարք։

— Սուլտանն առաքէ զՊէկդաշ 6000 զօրօք. Հեթում առեալ զհարկն՝ յետս դարձուցանէ։

— Կղեմէս Ե գրէ առ Ասպետս՝ յօգնութիւն Հայոց և Կիպրացւոց (6 յունիս)։

1306 Նոյն գրէ և առ թագաւորն Հայոց՝ քաջալերութիւն (յուլ. 2)։

— Վենետիք կողոպտեն զցամաքի բերդն Այասոյ։ 367

— Թղթակցութիւնք Հեթմոյ և Գր. Անաւարզեցւոյ, ևս և ընդ Հռովմայ։

— Թուղթ Եսայեայ Նչեցւոյ առ Հեթում տէր Կոռիկոսի։

1307 Ժողով Սսոյ (19 մարտի)։

— † Գրիգոր Անաւարզեցի։ — Կոստանդին Բ վերստին կարգի յաթոռն։ 106

— Վերահաստատութիւն դաշանց վաճառականութեան Վենետաց։

— Հեթում-Անտոն հարցեալ 'ի Պապէն՝ գրէ զՏաճարական ասպետաց։ 339

— — Թելադրէ առ Սալկոն փռանկ՝ զՊատմութիւն Արեւելեայց։ 338

— — Ընդունի 'ի Կղեմայ Ե գիր ընծայութեան առ թագաւորն փռանկաց։

— Պիլարղու զօրավար Թաթարաց դաւաճանութեամբ սպանանէ զԼեւոն Գ, զՀեթում Բ, և այլս. (նոյ. 17)։ 143. 222

— — Պաշարէ այլ ոչ կարէ առնուլ զԱնաւարզա։

— — Ըմբռնէ և զՕշին՝ եղբայր Հեթմոյ, այլ զերծանի առ ձեռամբ այլոյ զօրավարի։

— Օշին հալածէ զՊիլարղու. զորմէ 'ի գանգատ երթայ Ալինախ առ ղանն։

— Մարտիրոս վանահայր Սեաւ լերին՝ խոյս տուեալ երթայ 'ի Գենուա և հաստատէ վանս Հայոց։ 210. 411

— Պաղտին տէր Նղրոյ և Թորոս Երամիշտ հայրն Դրազարկու՝ դեսպանք յԱնգղիա։

— Թուղթ ընծայութեան Եդուարդայ թագաւորի Անգղիոյ առ Լեւոն Գ վասն եպիսկոպոսի միոյ (նոյեմ. 30)։

1308 Նորին թուղթ առ Լեւոն Գ և առ Հեթում, (համարելով զնոսա կենդանի). (մարտ 5)։

— Օշին թագաւորէ փոխանակ եղբօրն և եղբօրորդւոյ։ 271

— Կղեմէս Ե հարցանէ զկարգապետ Ասպետաց՝ զզօրութենէ Հայոց. սա ոչ յուսացուցանէ։

— Ամաւրի քեռայր Օշնի՝ առաքէ նմա յօգնութիւն 2000 հետեւակս, 1300 հեծեալս. առգրելով սմա զի սպրդեցէ ընդդէմ զգուշութեան եղբօր իւրոյ Ենրիկայ։

— Զապլուն կին նորա՝ գայ 'ի տեսութիւն եղբօր իւրոյ Օշնի։

— Հայր Դաւիթ հաստատէ վանս Հայոց 'ի Պատաւիոն։

1309 Կղեմէս Ե հաւանեալ գրէ կոնդակ վասն շինութեան եկեղեցւոյ Հայոց (Ս. Բարդուղիմ.) 'ի Գենուա։

— Ժողով Ադանայ, և հակառակութիւնք վասն ծիսից։

— Միջնորդութիւնք վասն արձակման Ենրիկայ յարգելանէն։

— Սմբատ զերծեալ յարգելանէն՝ գայ 'ի Սիսուան կորզել զթագն. ըմբռնի և անհետ լինի։

— Թուղթ ընծայութեան Կղեմայ Ե առ Օշին, վասն նուիրակի իւրոյ Պետրոսի (օգոստ. 15)։

— Օշին 'ի պատասխանւոջն՝ աղերսէ ներել Վենետաց։

1310 Ամաւրի սպանանի 'ի Կիպրոս։ — Դաշինք արձակման եղբօր նորա Ենրիկ թագաւորի։

— Ի միում աւուր արձակի նա յԱյասոյ, և Զապլուն մտանէ յԱյաս։ 258

— Մարաբոտ յելուզակ կողոպտեալ զՊափոս՝ ապաւինի յԱյաս։ 367

— Ծն. Լեւոն Դ (ապրիլ 26 կամ 27)։

— † Մայր նորա Զապել Բ, քոյր Օշնի պայլի (մայիս)։

1311 Ժողով 'ի Սիս։

— Կղեմէս Ե հաւանի Օշնի՝ ունել առ իւր վեց Եղբարս փրանկիսկեանս (յուն. 22)։

— Վէճք Օշնի և Ենրիկեայ թագաւորի Կիպրոսի վասն ժառանգութեան Զապլոնի, յոր սակս առաքէ Օշին առ Պապն զՊաղտին և զԵդուարդ Այասցի։

1312 Ալիծ դուստր Հեթմոյ Լամբրունեցւոյ, ծննդոց ս.? առաքեալս Կիպրոսի, տայ գրել Գիրս Սուրբս։ 272

1314 Օշին շնորհէ վաճառականաց Մոնբէլիէի ազատութիւնս։

— Գունդ մի Թաթարաց ասպատակէ 'ի Սիսուան։

1314 Օշին 'ի ձեռն դեսպանին 'ի Վենետիկ գնէ 560 Թիակս նաւուց: 369

1315 Եգիպտացիք առնուն զՄելիտինէ (Մալաթիա), և կոտորեն զՀայս: Աւր 19,000 սուրէգործաց լինել 'ի քաղաքին:

1316 — Նոյնպէս և զՏարանտա առեալ կոտորեն զՀայ պահնական, 1000 ոգիս:

— Ժողով Ատանայ: 258

— Վճիռ պետութեան Վենետկոյ վասն համեմատութեան հայկական դրամոց: 383

— Օշին կին առնէ 'ի Տարսոն՝ զՅովհաննա-Եռինէ դուստր Փիլիպպոսի իշխանի Տարենտայ Սիկիլիոյ:

1317 † Ալինախ 'ի լոգանալն 'ի գետն Կիւդնոս (24 օգոստ.): 232. 271

— Յովհան ԻԲ գրէ առ Թագուհին Հայոց խրատական (սեպ. 29):

— Նոյն առ Օշին, ընդունելով զդեսպանս նորա, Ստեփ. տէր Նորբերդի, Յակոբ եպիսկոպոս Կապանայ (հոկտ. 10): 287

1318 Նոյն առ Յակոբ եպիսկոպոս Կապանայ, տալով իշխանութիւն կարգելոյ 12 նօտարս, և այլն. (ապրիլ 8):

— — Առ Օշին, առաքելով Դոմինիկեանս ուսուցիչս լատին լեզուի (8 յունիս): 567

— Գարամանք ապստամբին 'ի Սիսուան. Օշին տէր Կոռիկոսի կոտորէ զնոսա: 271. 350

— Անդրոնիկ կայսրորդի քեռորդի Օշնի՝ կամի խոյս տալ 'ի Հայս, յերեսաց պարտատեարցն:

— Յակոբ եպիսկոպոս Կապանայ, Գրիգոր Թարգման և այլք, դեսպան առաքին առ Պապն, որ տայ նոցա գիր ընծայութեան առ Փիլիպպոս Թագաւոր Փռանկաց:

1319 Օշին տայ չինել զԴեղնքար դղեակ: 275

1319–20 — Հակառակեալ կռուի ընդ Կիպրացիս: — Պապն գրէ և յորդորէ 'ի հաշտութիւն:

1320 † Ստեփանոս արքեպիսկոպոս Տարսոնի ( 6 յունիսի): 74

— Եգիպտացիք անցեալք ընդ Ջահան[1] ասպատակեն, աւերելով մինչև 'ի Սիս:

— † Օշին Թագաւոր (20 յուլիս). խնամակալս կարգեալ որդւոյն՝ զՀեթում Նղրցի ջամբռլայ, զՀեթում սենեսկալ և ըզՊաղտին մարաջախտ:

— Լևոն Դ Թագաւորէ խնամակալութեամբ պայլեցն:

— Յովհան ԻԲ գրէ առ Լևոն տալ Աստեսաց Երուսաղեմի զառհմանեալ տուրս նախնեացն (սեպտ. 22):

— — Առաքէ քննիչս վէճից Հայոց և Կիպրացւոց:

— Եգիպտացիք ասպատակեն աւերածելով Այասայ, և հարեալ հալածին, մերձ 'ի Բարիքարկու: 354. 389

— † Ի մարտին Կիօգին տէրն Կանչոյ: 194

1321 Թիմուրտաշ կամ Տամուրտաշ ասպատակէ 'ի Մսիս և յԱտանա, և հալածի: — Լևոն ամրանայ յԱյաս:

— Վերահաստատութիւն դաշանց վաճառականութեան Վենետաց և Մոնբէլիերեայց: 325. 359-60

1322 Եգիպտացիք դարձեալ ասպատակեն յԱյաս. 600 Հայք դարանեալ 'ի կիրճս՝ հարկանեն զնոսա (ապրիլ):

— †† Հեթում տէրն Ջլկանոցի և Կոստանդին եղբայր իւր, Վահրամ Զօտիկ և այլք 'ի մարտին: 114. 244

— Եգիպտացիք աւերեն զմնայն Այասոյ: 389

— Օշին պայլ խնդրէ 'ի Յովհաննէ ԻԲ՝ կարգել եպիսկոպոս 'ի Կոռիկոս: 340 — Պապն յանձնէ նուիրակին քննել եթէ իցէ Կոռիկոս բաւական ընդարձակ (յուլ. 21):

— Օշին պայլ տայ զդուստր իւր Ալիծ՝ 'ի կնութիւն Լևոնի Դ, և ինքն առնու զմօրու նորա:

— † Օշին որդի Կոստանդնի մարաջախտի եղբօրն Օշնի պայլի:

— Յովհան ԻԲ գրէ առ Փիլիպպոս Թագաւոր Փռանկաց յօգնութիւն Հայոց, յետ աւերման Այասոյ (յուն. 22):

— — Գրէ և առ Պուսայիտ ղան (յուլ. 4):

— Երկար քննութիւն յատենի Քահանայապետին վասն օգնութեան Հայոց (դեկտ. 5):

— Հրամայէ Պապն ամենայն քրիստոնէից աղօթս վասն Հայոց և Կիպրացւոց, յիշելով զաւերածն Այասոյ (դեկտ. 20):

1323 Ապստամբ Եգիպտացւոց, և աւեր սահմանաց Մոլևոնի: 142

— Կոստանդին կաթողիկոս երթայ 'ի Հալէպ վասն դաշանց 15 ամաց հաշտութեան: Սուլտանն պատուէ զնա. պահանջէ 1,200,000 դրամ հարկ. խոստանայ չինել զեկեղեցիսն աւերեալս, բաց 'ի ծովայնոյն Այասոյ:

— Յովհան ԻԲ գրէ քաջալերս առ Թագաւորն և առ ժողովուրդն (մարտ 17):

— — Հարցանէ զնուիրակն՝ եթէ տուեալ իցէ Թագաւորին առ Օշին պայլ զգերդն Պապեռօնի: 340

— — Գրէ առ նուիրակն առնուլ 'ի Պարտի ընկերութենէ 30,000 ոսկի 'ի նպաստ Հայոց (ապրիլ 2): 390

— Վերաշինութիւն Այասոյ: 390

— Օշին պայլ գրաւէ զՏարսոն և զխաւրիս: 287

— — Ի բանտ արկանէ զՋապլուն, ուր և †† սա և անդրանիկ իւր Եներիկ:

— Յովհան ԻԲ հարցանէ զիրացս զնուիրակ իւր (ապրիլ 9):

— Դաշինք հաշտութեան Հայոց ընդ Կիպրացիս, որում չհաւանէր Թագաւոր նոցա վասն պայմանին Ջապլունի:

1323-4 † Յովհաննա Թագուհի կին Օշնի պայլի (և այրի Օշնի Թագաւորի):

1324 Եգիպտացիք դրժեալ դաշանցն՝ նեղեն զՀայս:

— Սանուտոյ Մարինոյ Դորչելլոյ Վենետկեցի գրէ առ Պապ 'ի նպաստ Հայոց: 390. ծ

— Յովհան ԻԲ առ Լևոն՝ վասն դեսպանաց նորա ( Հեթմոյ, Բարսղի արքեպիսկոպոսի Տարսոնի ) և վասն բաշխի 30,000 ոսկւոյն ( 13 օգոստ. ): 391

— Լևոն այլ դեսպան առաքէ առ Պապ՝ զԵղ. Թադէոս: 391 ծ.

1325 † Հեթում որդի Օշնի պայլի: 340

1325—6 Սանուտոյ գրէ առ Լևոն, առ Պապ և առ այլս, 'ի պաշտպանութիւն Հայոց առաքել նաւս զինեալս:

1326 Յովհան ԻԲ առ Լևոն վասն Ս. Գէորգ վանաց Լամբրոնի (28 ապրիլ): 113

1327 — Խնդակցի ընդ Թագաւորին Կիպրոսի վասն հաշտութեանն ընդ Հայոց (1 ապրիլ):

— Լևոն դեսպանս առաքէ առ Պապ զՅակոբք Թարգման, և զՍիմոնդ՝ որ մնայ 'ի Վենետիկ:

— — Պարձեալ առաքէ զԹադէոս եպիսկոպոս Կաֆայի, զԳրիգոր Սիֆիոյ?:

— † Կոստանդին Գ կաթողիկոս: Յաջորդէ Յակոբ Բ քեռորդի Գր. Անաւարզեցւոյ:

1328 Լուդվիկ կայսր Գերմանիոյ գանգատի զՔահանայապետէն՝ զի ոչ օգնէ Հայոց:

1329 Լևոն տայ ըմբռնել զՕշին պայլ, ապա և զեղբայր նորա Կոստանդին, և սպանանել (26 յանու.): 340

1330 Մեծ յաղթութիւն Հայոց յԱյաս, և կոտորած Եգիպտացւոց (նոյեմբ. 25):

1331 Վրէժք Եգիպտացւոց և առնուլ զԱյաս: 391

— Լևոն գրէ զիրացս յարեմուտս: Փիլիպ. Թագաւոր Փռանկաց տայ 10,000 ոսկի. Պապն սահմանէ 30,000: 391

— — Կին ( երկրորդ ) առնէ զԿոստանդիա-Եղէոնորա զայրին Թագաւորին Կիպրոսի, զդուստր Փրեդրիկի Թագաւորի Սիկիլիոյ: 363 ծ.

— Թուղթ ընծայութեան Պապին առ Փիլիպպոս՝ վասն դեսպանաց Հայոց ( 20 սեպ. ):

— Լևոն շնորհէ Սիկիլիացւոց ազատութիւնս վաճառականութեան ( 24 նոյեմբ. ):

1331-2 Սարգիս Պիծակ նկարիչ և գրիչ: 235. 517

1332 Յակոբ կաթողիկոս գրէ վասն միաբանութեան եկեղեցւոյ ( 6 մարտ ):

— Փիլիպ. Թագաւոր Փռանկաց տայ 1000 ոսկի ֆլորին վասն չինութեան բերդորէից Հայոց ( 11 յունիս ): 391

— Յովհան ԻԲ պատուով արձակէ զդեսպանս Լևոնի (Ստեփանոս եպիսկոպոս Մամեստիոյ, և այլն). (օգոստոս):

— — Գրէ առ Աստեսս գնել զԱնտոիոքեակ և զՍիկ՝ զորս կամէր

[1] Նաւուել քան զգան հազար ասեն զԹիւ զօրաց բանակին Եգիպտացւոց. յորոց՝ յանցանելն ընդ գետն Ջահան՝ ջրասոյզ եղանչին հազար հեծեալք:

վաճառել Լեւոն, ոչ կարելով պահել (2 օգոստ.)։ 319

1332 Աւագ խալամաչի կարաւանապետ Վենետաց 'ի Հայս։ 370 ծ.

1333 Նորոգութիւն դաշանց վաճառականութեան Վենետաց (30 նոյեմբ.)։

— Վճիռ պետութեան Վենետաց վասն համեմատութեան հայկական դրամոց։ 384

— † Ռիթա-Մարիամ-Քաենէ կայսրուհի, դուստր Բ Լեւոնի. վասն որոյ Նիկեփոր Պաամեր գրէ ճարտասանութեամբ մխիթարութիւն առ կայսրն։

— Լեւոն դեսպան առաքէ առ Պապ զՊալլոյ Սբինուլա, 'ի խնդիր օգնութեան։ — Ցորդորմամբ Պապին միաբանին թագաւորք փռանկաց, Նաւարրայ, Արագոնի, Բոհեմիոյ, յօգնութիւն Հայոց և այլոց։ 391

1334 Պապն ծանուցանէ զայս գրով առ Լեւոն (մարտ)։

1335 Փիլիպպոս թագաւոր փռանկաց վիճի ընդ Պապին վասն խնդրոյ օգնութեան Հայոց։

— Այասցիք կոտորեն զայլազգիս։ 332

— Ալթուն-պուղայ ոստիկան Հալպայ ապստամբէ յԱտանա և 'ի Մոլեւոն, բազում գերութեամբ (1 մայիս)։ 212

— Աւապատակեն և Գարամանք։

— Լեւոն շնորհէ Պարտի ընկերութեան Ֆլորենդայ արտօնութիւնս (10 յանուար)։

— — Առաքէ զՄխիթար եպիսկոպոս Գառներոյ առ սուլտանն, վասն հաշտութեան. և զՊետրոս Խպտենց առ Ալթունդաշ ամիրայ Հալպայ, որ պահանջէ հարկ 600,000 դրամ։ 142. 260

— Բենեդիկտոս ԺԲ Պապ տայ գիր ընծայութեան Պեմունդի Լուզինեան դեսպանի Հայոց առ թագաւորն փռանկաց (12 հոկտեմբեր)։

— Եդուարդ Գ թագաւոր Անգղիոյ պատուիրէ տալ 40 լիտր արծաթոյ՝ դեսպանին Հայոց (Գէորգ Siglik?). (12-3 դեկտ)։

1336 Փիլիպ. թագաւոր փռանկաց խոստանայ յուղի անկանել խաչակրութեամբ յամեան օգոստոսի. (11 մարտ)։

— Պապն գրէ առ Կոստանդիա թագուհի քաջալերս (16 ապր.)։

— Նոյն և առ կղզեցիս՝ առաքել 'ի Հայս ցորեան 'ի Կամպանիոյ, և 10,000 ոսկի։

— Նոյնյանձնէ 'ի խնամս թագաւորին Կիպրոսի՝ զորդիս Զապլունի և Ամաւրեայ։

— Ալթուն-պուղայ առնու զՆղիր բերդ։

— Աւապատակ Գարամանաց։ 295

— Լեւոն դեսպանս առաքէ առ Նասր սուլտան՝ զՊաղտին մարաջախտ, զՍիր Սիրուն դանապան և զՎասիլ Թղթագիր. ամիրայն Հալպայ նենգեալ՝ 'ի բանտ արկանէ զնոսա, ուր † Պաղտին (12 դեկտ.)։ 413

1337 Լեւոն առեալ թողու 'ի սուլտանն զԱյաս և զայլ բերդորայս մինչև 'ի Ջահան գետ։ 322

1338 Բենեդիկտոս ԺԲ գրէ քաջալերս առ Լեւոն (1 մայիս)։

— Ծն. Օշին որդի Կոստանդնի (Բ), որդւոյ Պաղտին մարաջախտի։

1340 Իպն Պադուդա աշխարհագիր յԱլայա և յայլ ինչ կողմանս Կիլիկիոյ։ 315

— Կրօնական վէճք. վասն որոյ փոխի Ցակոբ կաթողիկոս, և կարգի Մխիթար։ 147

1341 Լեւոն դեսպանս առաքէ առ Պապ՝ զԴանիէլ Մինոր և զԹորոս Միքայելենց՝ վասն խնդրոցն։

— Պապն պատասխանէ ժողով գումարել և քննել (օգոս.)։ 147

— Դանիէլ Մինոր հրամանաւ Լեւոնի գրէ երկար ընդդիմագրութիւն ամբաստանութեանցն։

— Պապն վերստին պահանջէ պատասխանիս 'ի ժողովոյն։

— Լեւոն գրէ առ դուքսն Վենետկոյ վասն պարտուց Վենետաց ոմանց (1 մարտ)։

1342 † Լեւոն Դ (28 օգոստ.) ըստ ոմանց սպանանի վասն չատ երեւս առնելոյ Լատինաց։

— Թուղթ Եդուարդայ Գ թագաւորի Անգղիոյ առ Լեւոն, յուսադրութեամբ օգնութեան (1 սեպտ.)։

— Ապստամբ Եգիպտացւոց և կոտորած Հայոց։

1342 Հայք ընտրեն 'ի թագաւոր զԿի կամ Կիտ (Գուիտոն) որդի Զապլունի և Ամաւրեայ, թագադրեալ՝ կարգեալ զեղբայր նորա կրտսեր՝ զՃուան գունդստապլ, ցդալուստ ընտրելոյն։

1343 Մխիթար կաթողիկոս ժողով գումարեալ 'ի Սիս, առնէ ընդարձակ պատասխանի առ Պապն։ 147

— Կի առաքէ թղթով առ Եդուարդ թագաւոր զԿոստանդ ձիաւոր (8 մարտ)։

— Պատասխանի Եդուարդայ (20 սեպտեմբեր)։

— Պապն տայ դեսպանին գիր ընծայութեան առ սա (յուլիս)։

— Նոյն գրէ առ Կոստանդիա դշխոյ, տալով իշխանութիւն առաքելոյ 25 ուխտաւորս (7 յուլիս)։

— — առ Եդուարդ թագաւոր վասն դեսպանաց Լեւոնի (Գրիգոր Սոգենց և Անտոն Մինոր). (9 յուլիս)։

— — առ Կի թագաւոր զի դարձուցէ առ Կոստանդիա զստուրս առնն (17 յուլիս)։

1344 Կի դեսպան առաքէ առ Պապ զՑովհաննէս եպիսկոպոս Կրակայ, զԴանիէլ Մինոր, և այլն։

— Կղեմէս Զ առ Կի, զի ընկալաւ զդեսպան նորա Փրանկիսկոս Պիզացի. խոստանայ ստանալ 'ի շինութիւն եկեղեցւոյն Տարսոնի, և օգնել նաւուք։ Գրէ և առ Նուիրակ իւր (8 սեպտ.)։ 271

— — Գրէ դարձեալ առ Կի զի ընկալաւ զդեսպանս նորա, Դանիէլ Մինոր, և այլն. (11 սեպտ.)։

— †† Սպանանին Կի թագաւոր և եղբայր նորա Պեմունդ փեսայ Պաղտին մարաջախտի։

1345 Կոստանդին (Բ) որդի Պաղտին մարաջախտի թագաւորէ։ 380

— — Դրամս հատանէ նորաձեւս։ 216. 380

— — Հանեալ զդիակունս Կիի և Պեմունդի յԱտանայ, տայ թաղել յեկեղեցւոջ Տարսոնի։ Զորդիս առաջնոյն և զկին Ճուանի (Սուլտան) բանտարգել առնէ 'ի Կոռիկոս։ 273

— Ցովհան նուիրակ եպիսկոպոս Սուտրինեայ գրէ զդէպս ժողովոյն Հայոց։

1346 Կղեմէս Զ նուիրակս առաքէ առ Մխիթար կաթողիկոս զՑովհան եպիսկոպոս Կորոնի և զԱնտոն Կայետայ (31 օգոստ.)։

— Դեսպան Կոստանդնի 'ի Վենետիկ (մաքսանենգ)։ 371

— Կղեմէս Զ գրէ առ նուիրակս իւր 'ի Հայս՝ վասն նախայիշեալ խնդրոց (30 նոյեմ.)։

— Կոստանդին թագաւոր ընդ նուիրակացն առաքէ դեսպան զԿոստանդին Carsilly?

1347 Կղեմէս Զ յորդորէ զթագաւորն Անգղիոյ վասն հաշտութեան ընդ փռանկաց և օգնութեան Հայոց (31 յանուար)։

— — և առ Տանտոլոյ դուքս Վենետկոյ, առ որ գրեալ էր և Կոստանդին. (23 սեպտ.)։

— — Գրէ առ Մխիթար կաթողիկոս խոստանալով ամ ամ 12,000 ոսկի և 1000 ձիաւորյետ միաբանութեանն։

— Նոյնպէս գրէ և առ Կոստանդին թագաւոր (27 սեպտ.)։

— Նոյն առ նուիրակս իւր (5 հոկտ.)։

— Նոյն առ կարգապետ ասպետաց Հռոդոսի՝ պահել զԿուռիկոս բերդ։

1347-8 Գարաման տէրն Իկոնիոնի առնու զՊապեռոն։

— Եգիպտացիք տիրեն Այասայ. Հայք օգնութեամբ ասպետացն՝ թափեն 'ի նոցանէ։ 392

1348 Սրածութիւն համաշխարհական. մեռանին և 'ի Սիս 180 ոգիք յաւուր։

1349 Կղեմէս Զ գրէ առ Հուգոն թագաւոր Կիպրոսի տալ առն ըզՋապել դուստր Կի թագաւորի (26 փետր.)։

— Կոստանդին զօրավար՝ դեսպան թագաւորին Հայոց առ թագաւորս Անգղիոյ և փռանկաց. առ որս գրէ և Պապն։

1350 Կղեմէս Զ գրէ առ Փիլիպ եպիսկոպոս Նիկոսիոյ՝ տալ Հայոց 6000 ոսկի ֆլորին (16 սեպտեմբ.)։

1351 Նոյն գրէ առ Կոստանդին թագաւոր վասն տրիցն և վասն հաւատոց (14 սեպ.)։

— Նոյն առ նուիրակս իւր (23 սեպտ.)։

— Նոյն առ Մխիթար կաթողիկոս՝ վերստին պահանջելով բացայայտութիւն բանից (29 սեպտ.)։

— — Գրէ և առ կարգապետ ասպետաց Հռոդոսի օգնել Հայոց։

1353 Իննովկենտ. Զ գրէ առ Ներսէս Պալիենց երթալ 'ի Սիս և թարգման կաթողիկոսական ինւոյ իւրոյ։
1355 Աւարառակ այլազգեաց 'ի Տարսոն, յԱտանա, և 'ի գիւղս։
— † Կարապետ Տիվանպաշի։ 320
1356 † Պարոն Հեթում Ճամբաւլյն։
1357 Սրածութիւն 'ի Սիս. բազում պարոնայք և քահանայք և արքայորդիքն մեռանին։
1360 Սէյֆէտտին Պէկթիմուր կուսակալ Հալպայ նուաճէ զՏարսոն, զԱտանա, եւ այլն։
— Եդուարդ Գ թոյլ տայ Հայոց մանձանց շրջել 'ի մայր, վասն նորոգութեան եկեղեցեաց իւրեանց (28 ապրիլ)։
1361 Կուրկոսեցիք տան զաւան և զբերդ իւրեանց 'ի Պետրոս թագաւոր Կիպրոսի։ 342
1363 † Կոստանդին Բ թագաւոր։
— Ըստ ոմանց՝ Լեւոն ոմն բռնաբարէ զթագն, և մեռանի։
— Պեմունդ որդի Ճուանի 'ի դիմել 'ի Հռոմ վասն թագաւորութեան, † 'ի Վենետիկ, ամաց 24։
1364 Սպանանի 'ի Սիս՝ Սիր Նիկոլ, որ թուի 'ի զարմէ Լուզինեանց։
— Եդուարդ Գ թոյլ տայ Ներսիսի վանահօր Ս. Գէորգայ՝ շրջել զամ մի յերկրի իւրում. (7 փետր.)։ 410
1365 Ուրբանոս Ե գրէ առ Հայս՝ թագաւորեցուցանել զԼեւոն՝ կրսեր որդի Ճուանի։
— Շատ ոք 'ի Հայոց գաղթեն 'ի Կղզիս (Հռոդոս, Կով. Միտիլինէ)։
— Պետրոս Ա թագաւոր Կիպրոսի առնու զԱղեքսանդրիա Եգիպտոսի (10 հոկտեմբեր)։
— Կոստանդին Գ որդի Հեթմոյ Ճամբաւլյի թագաւորէ։ 413
1367 Պետրոս գայ յԱյաս 100 նաւուք, և ոչ գտեալ պատրաստ զԿոստանդին՝ դառնայ յետս։ 393
1368 — Խնդրէ 'ի սուլտանէն Եգիպտոսի զծախս արշաւանին Այասոյ, իբր պայման մի հաշտութեան (մայիս)։
— Առաքէ զեղբայր իւր զԱնտոն 'ի Կոռիկոս, և հալածէ զայլազգիս։
— Հայք հրաւիրեն զՊետրոս գալ թագաւորել ինքեանց։
— Մանչակ ամիրայ Տարսոնի առապատակէ 'ի Սիս. քաջն Լիպարիտ հալածէ զնա։ 226
— Պատասխանի դքսին Վենետկոյ առ Մարիամ դշխոյ (կին Բ Կոստանդնի). (11 հոկտ.)։
1369 Նիկողայոս եպիսկոպոս Հայ 'ի Պրիւժ Ֆլանտրայ։ 359 ծ.
— Խօշթիմուր կուսակալ Հալպայ պաշարէ զՍիս, և 'ի բաց դառնայ։
1370 Երկրորդ անգամ գիմէ Մանչակ 'ի վերայ Սսոյ։ † Լիպարիտ, անպաշտպան թողեալ։ 227
— Միւս անգամ առապատակէ Մանչակ (դեկտ 11)։
1371 Մարիամ դշխոյ դեսպան առաքէ 'ի Նէապօլիս զարքեպիսկոպոսն Սսոյ Յովհաննէս, և զՄանուէլ թարգման՝ որդի Յովհ. ասպետի՝ Գինուացի, Հայ ազգաւ։
1372 Գրիգոր ԺԱ Պապ գրէ առ Փիլիպպոս իշխան Տարենտոյ, փեսայացուցանել 'ի Մարիամ դշխոյ՝ զՕթոն իշխան Պրունզուիքեան (22 յան.)։
— † Զապլոն, մամ Սիր Նիկոլի։
1373 Կոստանդին Գ սպանանի (ապրիլ)։ 227
— Թագապահ կարգի Մարիամ դշխոյ, և օգնականք նմա Վասիլ որդի Թորոսի ? և Բարդողիմէ որդի Կիրի, ստարածին։
— Լեւոն Համուսցի հրաւիրակ առաքի առ Լեւոն (Ե) որդի Ճիւանի՝ 'ի թագաւորութիւն։ — Սա առաքէ երեսփոխան իւր զԿոստանդ ոմն հայազգեա՝ զիւր թիկնապահ։
1374 Լեւոն Ե յաւուր Զատկի հասանէ 'ի Կոռիկոս (ապրիլ 2)։ 342
— — Մտանէ 'ի Սիս (26 յուլ.)։ 227
— — Թագի ընդ կնոջն Մարգարիտա Սուասոնեան)։ Մարաջախտ կարգէ զմտերիմ իւր Սոհիեր (24 սեպտ.), տալով նմա կին զՍիբեղ՝ քոյր Բ Կոստանդեայ, զայրին Պեմունդի հօրեղբօր իւրոյ։ 227
— Տաւուտ բէկ 12,000 արամբք պաշարէ զՍիս. ապա թոյլ տայ մուծանել պաշար 'ի քաղաքն։
— Սուլտանն առաքէ զԱպուպէքր՝ պնդել զպաշարումն, և տրգելուլ զպարմանն։ Սա 'ի ճրագալուցի Յայտնութեան 15,000 արամբք պաշարէ զՍիս։
1375 Գայ նմա օգնական Աշխէտուր կուսակալ Հալպայ՝ այլ եւս 15,000ք. (24 փետր.)։ 227
— Լեւոն տայ հրկիզանել զաւանն Սիս և ապաստանիլ 'ի բերդն։ 128
— Թափէ 'ի գաւաճանաց զՎերին կլայն Սսոյ (23 մարտ)։ 227
— Անձնատուր լինի յամիրայն Հալպայ (ապրիլ)։ 228
— Յաւուր Զատկի ամիրայն վարէ զԼեւոն ընտանեօքն և Մարեմաւ 'ի Բերիա (22 ապրիլ)։
— Մտանէ Լեւոն 'ի Գահիրէ, և գնի յարգելան (9 յունիս)։
— Կաթողիկոսն և այլք դառնան 'ի Սիս, ընդ որս և Վասիլ ոմն ուրացող։
— Արձակի դշխոյն Մարիամ և երթայ բնակէ յԵրուսաղէմ։
— Հայք Գահիրէի կամին յիշել զանուն Լեւոնի 'ի պաշտաման, յոչ կամս կաթողիկոսին։
— Զապել դուստր Կի թագաւորի՝ յորդորէ զկայսր Կ. Պօլսի յազատութիւն Լեւոնի։
— Գրիգոր ԺԱ յորդորէ զարեւմտեայս 'ի խաչակրութիւն, յիշեցուցանելով զԼեւոն (8 դեկտ.)։
1377 † Մարիամ (Մարիւն) դշխոյ յԵրուսաղէմ։
.... † Մարգարիտա կին Լեւոնի, և թաղի 'ի Ս. Մարտիրոս եկեղեցի Հայոց, մերձ 'ի Գահիրէ։
1380 Սոհիեր գրէ առ արեւմտեայս՝ միջնորդել յազատութիւն Լեւոնի. յոր սակս առաքի առ նոսա և Յովհաննէս Տարտէլ գրան երեց Լեւոնի և պատմիչ արկածից նորին։
— Թագաւորն Արականիոյ գրէ առ սուլտանն վասն ազատութեան Լեւոնի (3 սեպտ.)։
1382 Արձակի Լեւոն. և ինքն տայ արձակել զգերեալսն որ 'ի Գահիրէ. (30 սեպտ.)։
— Նաւարկէ յԱղեքսանդրիոյ (7 հոկտ.)։
— Հասանէ 'ի Հռոդոս, ուր գտանէ զԶապել դուստր հօրեղբօր իւրոյ (21 հոկտ.)։
— Հասանէ 'ի Վենետիկ և պատուով ընկալեալ լինի (12 դեկտ.)։
1383 Թագաւորն Կաստիլիոյ պարգեւէ Լեւոնի զտէրութիւն Մատրիտ քաղաքի՝ ցկեանս իւր։
1385 Լեւոն 'ի Բարիզ ընդունի 'ի Կարոլոսէ թագաւորէ զապարանս Saint-Ouen 'ի բնակութիւն, և ռոճիկ։
1385—6 Երթեւեկէ 'ի Լոնտոն և 'ի Բարիզ, միջնորդել հաշտութեան թագաւորաց Անգղիոյ և Փռանկաց, և 'ի ձեռս բերել զիւր թագաւորութիւնն։
1389 Յովհան կոմս Նէվըրսի յերթալն յօգնութիւն Ունգարաց՝ խոստանայ թափել և զՀայաստան։ (Պարտեալ 'ի Նիկոպօլիս (28 նոյեմբ. 1390). 'ի գերե ելանէ յայս քրիստոնէից։
— Պարգուգ (Պէրքուք) սուլտան Եգիպտոսի նուաճէ զմեծ մասն Կիլիկիոյ։
— Մէլիք Էօմեր սպանանէ զԹէոդորոս կաթողիկոս։
1392 Լեւոն գրէ զկտակ իւր. զառ յայլոց՝ թողու 100 ոսկի փրանգ Ստեփաննոսի ձիաւորի Սսեցւոյ։ Կտակակատար կարգէ զՂէհաւիկկարդ թագաւոր Անգղիոյ. (30 յուլիս)։
1393 † Լեւոն Ե թաղի 'ի Ս. Դիոնեսիոս վանս 'ի Բարիզ, ընդ թագաւորս Փռանկաց (29 նոյեմ.)։
— Թագաւորք Կիպրոսի ժառանգեն զանուն թագաւորութեան Հայոց։
1399 Մատթէոս արքեպիսկոպոս Տարսոնի՝ օրհնէ զՅովհան թագաւոր (Janus) Կիպրոսի (11 նոյեմ.)։
1400 Հողմ սաստիկ 30 օր 'ի Կիլիկիա և նուազութիւն պարենի։
1403 Սսեցիք 30,000 տուն գաղթեն 'ի Կիպրոս և յարեւմուտս։
— Մնացեալքն չքաւորք՝ անձնատուր լինին (առ Օսմանցւոցն կամ առ Թիմուրեանս). (6 յունիս)։
1415 Ապու Նասր սուլտան Եգիպտոսի գրէ և առ ամիրայն Սսոյ վասն ազատ վաճառականութեան Վենետաց։
1415-8 Սուլդան Մէհէմմէտ Ա կորզէ 'ի Օսմանցւոց զՏարսոն, որում տիրեն յետոյ Եգիպտացիք։
1418 Տէր Շամշ փոանկ ուղեւոր 'ի Կոռիկոս։ 342
1419 Մուստաֆա Գարաման նուաճէ զբերդն Տարսոնի։

1420 Եգիպտացիք հալածին զնա։
1421 Երկրորդ գաղթ Սսեցւոց յայնկոյս ծովու, ըստ ժամանակագրին Կիլիկիոյ։
— Կի կամ Գուիտոն ուրջու Ե Լեւոնի՝ կարգի կանոնիկոս եկեղեցւոյն Սուսանի։
1422 Պօղոս կաթողիկոս նորոգէ զՍ. Աննա վանս Սսոյ՝ 'ի բնակութիւն իւր։
1425 † Սիր Թորոս Կոստանդ Ժիտուար 'ի Կիպրոս, մարտնչելով ընդ ասպատակս Եգիպտացւոց (9 օգոստ.)։
1426 Ընդ այլոց ազգաց Հայք 'ի Կիպրոս բազմին ընդ Եգիպտացիս. Կոստանդին երէց եղբայր Լեւոնի եպիսկոպոսի վիրաւորեալ 'ի մարտին † (7 յուլիս)։
1432 Բերդրանտոն (de la Brocquière) ուղեւոր փռանկ 'ի Կիլիկիա։ 260. 275. 296
1435 Նուաճին Կապան և այլ ինչ բերդորայք՝ զորս տակաւին ունէին Հայք։
1439 Մուսա Խալ-Գարայ Թուրքման հարկանէ զԽօշ-կէլտի ամիրայ Հալպայ և զՆէկէ Ռամազան՝ յանձուկս Սսոյ։
1447 Կարապետ կաթողիկոս վերանորոգէ զՍ. Աննա վանս։
1448 Փիր Ահմէտ Գարամանի տիրէ Կոռիկոսի։ Թագաւորն Կիպրոսի գլխատէ զբերդապահն՝ իբրև մատնիչ։
1461 Սսեցիք ապստամբին 'ի Մէլէք Իօմէր ոստիկանէ։
1467 Շահ-Սուար Զիւլգատրեան տիրէ քաղաքաց Կիլիկիոյ։ 199 228. 260
1468 — Այրէ զաւանն Սսոյ (1 յունիս)։ Բերդացիքն անձնատուր լինին (23 դեկտ.)։
— Վարշագ Թուրքմանք կողոպտեն զՍիս։ 228
1469 Սրածութիւն 'ի Սիս։
1471-3 Գարամանք դաշնակցին ընդ Վենետաց և ընդ Պարսից՝ ընդդէմ Օսմանեանց։ 286. 296
1472 Խօշքատէմ սուլտան Եգիպտոսի զմի յեկեղեցեաց Սսոյ փոխէ 'ի մզկիթ։
1473 Վենետք տիրեն արեւմտեան ծովակողմանց Կիլիկիոյ։
1485 Գարակէօզ փաշայ Օսմանեանց նուաճէ զաղատ մնացեալ բերդորայս։
1486 Եգիպտացիք յաղթեն Օսմանեանց առ Ատանայիւ։
1486-7 Օսմանեանք նուաճեն զԳարամանս։
1488 Սուլտան Պայէզիտ նուաճեալ եղանէ յԱյաս։
— Ալի փաշայ նուաճէ զԿոռիկոս բերդ։ 210
1489 Պետութիւն Վենետկոյ հաստատէ զանձինկ ուսագործերոյն Հայոց 'ի Կիպրոս։
1510 † Կատարինէ Գոռնարոյ յետին անուանեալ թագուհի Հայոց 'ի Վենետիկ (10 յուլիս)։ 332
1527 Քօրքէտտին Ճէլալի ապստամբէ 'ի Սիս։ 228

1583-7 Սսեցի վաճառականք 'ի Վենետիկ և 'ի Հռոմ։ 229. 262
1584 Լէոնարդոյ նուիրակ Պապին 'ի Կիլիկիա, առ Ազարիա կաթողիկոս, վասն միաբանութեան եկեղեցւոյ։
1600 Սաթըրճի կամ Սատաւճի — օղլու ապստամբ կողոպտէ զՍիս։ 228
1605-6 Դուրիլ կամ Տաւուլ ապստամբ, զոր հալածեն Հայք։ 260
1661 Ծն. Կարապետ կաթողիկոս 'ի Զէյթուն։
1665 Պետութիւն Վենետկոյ շնորհէ ազատութիւն մաքսի Հայոց Կիպրացւոց։
1734 Աջպահեանց կաթողիկոսութեան սկիզբն։
1742 Հաստատութիւն պատրիարքական աթոռոյ հռոմէական Հայոց, յանուն Կիլիկիոյ։
1811-2 Պոֆորդ անգղիացի ծովապետ քննէ զծովեզերս Կիլիկիոյ։
1827 Տատար-պէկ բռնաւոր Պայասայ՝ ձերբակալեալ գլխատի յԱտանա։
1828 Հաճի-Ալի 'ի կապանս Կուկլակոյ նուաճի Օսմանեանց։
1832 Փոխարքայն Եգիպտոսի նուաճէ զԿիլիկիա։
1836 Դեքսիէ (Texier Charles) ճարտարապետ փռանկ՝ տեղաքննէ 'ի սահմանս Կիլիկիոյ։
1836-53 Քոչի բռնաւորքն 'ի Գահս Կիլիկիոյ։ 16
1837 Աւստրիացի երկրաբանք քննեն զմետաղահանս Կիլիկիոյ։ 9
1839-40 Ամրոցք Եգիպտացւոց և Օսմանեանց 'ի կապանս Կիլիկիոյ, 'ի ժամանակի պատերազմացն։
1840 Եգիպտացիք ստիպին թողուլ ելանել 'ի Կիլիկիոյ։
1842 Նիկոլ Մաճճիորէ հրատարակէ ('ի Բոլէրմոյ) զՍտորագրութիւն Ատանայ։
1845 Հելուրայի բռնաւորքն 'ի Քարային Կիլիկիա։ 19
1852 Պելճիոյոզոյ տիկին յակունս Կիւդնոսի։ 117
1852-3 Վիկտոր Լանկլուա առաքեալ 'ի Կիլիկիա 'ի փռանկաց պետութենէ, 'ի քննութիւն հնութեանց։ 197
1853 Էնզուըրթ (Ainsworth) հրատարակէ զՊարքըրի հնաքննական ստորագրութիւն Կիլիկիոյ. (Cilicia and its Governors). 430 ծ.
1862 Դէպք Զէյթունի։ 187-8
1864 Լէոն Բօլ (Léon Paul) առաջին եւրոպացի այցելու 'ի Զէթուն։ 188. 190 ծ.
1871 Պետրոս Տէր Մելքոնեան եպիսկոպոս հրատարակէ զՊատմութիւն ազատութեան Հաճնոյ։
1874 Ֆավր և Մանտրոյ (Favre et B. Mandrot) տեղագիր քննիչք Կիլիկիոյ։
1883 Հաճնոյ հրդեհ (2-14 յուլիս)։
1884 Յակոբ Ալահվէրտեան հրատարակէ զՆկարագիր Ուլնիոյ կամ Զէյթունի։
— Հրդեհ Զէյթունի (10-22 սեպտեմբեր)։



# ՑԱՆԿ ԲՈՒՍՈՑ

# ՅԱՆԿ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ

---

# ՅԱՆԿ

# ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ

---

# ՅԱՆԿ

## ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ


ՍՏՐԱԲՈՆ. *համրածանօթ աշխարհագիր յոյն* (60 Ն. Քն. 25 Յ. Քնի.). — STRABO

ՍՄԻՏՀ. *Բառգիրք յոյն և լատին Աշխարհագրութեան.* — WILL. SMITH, Dictionary of Greek and Roman Geography, in two volumes. *London*, 1854-57.

ՌԻԴԴԷՐ. *Երկրագիտութիւն, կամ Ընդհանրական Աշխարհագրութիւն բաղդատեալ. հատոր ԺԹ.* RITTER, Erdkunde, oder Allgemeine vergleichende Geographie, XIX Theil. *Berlin*, 1859.

ՔԻԲԵՐԴ. *Դասագիրք Հին Աշխարհագրութեան.* — H. KIEPERT, Lehrbuch der Alten Geographie. *Berlin*, 1878.

ՌՈՒՍՍԷԿԷՐ. *Երկրաբանական տեղացոյց Տաւրոսի և մերձաւոր վայրաց.* — RUSSEGER, Geognostische Karte des Taurus und seine Nebezweige in den Paschalik Adana und Marasch, nebst den angrenzenden Theile des Paschalikes von Aleppo. *Wien*, 1842.

ԲՕԼ-ԼՈՒԳԱՍ (*Պօղոս-Ղուկաս, ծն.* 1664†1737). *Երկու Ուղևորութիւնք յասիական Թուրքաստան.* - PAUL LUCAS, Voyage dans la Grèce, Asie-Mineure, la Macédonie et l'Afrique. *Amsterdam*, 1712.

— Voyage fait en 1714 dans la Turquie, l'Asie, Sourie, Palestine, Haute et Basse Egypte. 3 vol. *Rouen*. 1744.

ՊՕՖԸՐԴ. *Գարամանիա.* — FRANCIS BEAUFORT, Karamania, or, a Brief description of the South coast of Asia Minor. *London*, 1817.

ՊՐԻԱՆՈՅ. *Ասորիք եւ Փոքր Ասիա.* — BRIANO GIORGIO, La Siria e l' Asia Minore, illustrate. *Torino*, 1841.

ՉԻՀԱՉԷՖ ՊԵՏՐՈՍ. *Ստորագրութիւն Փոքր Ասիոյ.* - TSCHIHATSCHEFF PIERRE, Asie-Mineure; Description Physique, Statistique et Archéologique de cette contrée. 4 vol. *Paris*, 1853-1860.

— *Նոյն. Ճանապարհագրութիւնք Փոքր Ասիոյ եւ Հայոց.* — TSCHIHATSCHEFF, Reisen in Klein-Asien und Armenien, 1847-1863. Itinerare redigirt und mit einer neuen Construction der Karte von Kleinasien begleitet von KIEPERT. *Gotha*, 1867.

— Itinerar der Kleinasiatischen Reise im Jahre 1858, von Herrn Verfasser durch Herrn C. RITTER mitgetheilt, mit Anmerkungen und Karte von H. KIEPERT. *Berlin*, 1859.

ՊԱՐՔԸՐ. *Թերափք, կամ Կիլիկիա և վարիչքն.* — BURCKHARDT BARKER WILL., Lares and Penates, or, Cilicia and its Governors. Edited by William Francis Ainsworth. *London*, 1853.

ԼԱՆԿԼՈՒԱ. *Ուղևորութիւն 'ի Կիլիկիա.* — VICTOR LANGLOIS, Voyage dans la Cilicie et dans les montagnes du Taurus, exécuté pendant les années 1852-3. *Paris*, 1861.

ՊԵԼՃԻՈՅՈԶՈՅ *Տիկին. Փոքր Ասիա և Ասորիք.* — BELGIOJOSO (la Princesse), Asie Mineure et Syrie. *Paris*, 1861 (Deuxième édition).

ԼԷՈՆ ԲՕԼ (*Լևոն-Պօղոս*). *Օրագիր ճանապարհորդութեան յայլեւայլ կողմանս.* — LÉON PAUL, Journal de Voyage. Italie, Égypte, Judée, Samarie, Galilée, Syrie, Tarsus Cilicien, Archipel grec. *Paris*, 1865.

ՖԱՎՐ ԵՒ ՄԱՆՏՐՈՅ. *Ճանապարհորդութիւն 'ի Կիլիկիա.* — FAVRE C. et MANDROT B., Voyage en Cilicie. *Paris*, 1878.

— La Cilicie. (Article inséré dans la *Revue Britannique*), 1879.

ԳՈՒՐԴԻՎՐՈՆ. *Արեւելակողմն Միջերկրական ծովու.* — M. DE COURTIVRON, Bassin oriental de la Mer Méditerranée. I.ère partie: Rhodes, Chypre, Caramanie et Syrie. Traduit du Mediterranean Pilot. *Paris*, 1880.

ՏԷՎԻՍ. *Կեանք յ'ասիական Թուրքիա.* - Rd. D. E. DAVIS, Life in Asiatic Turkey. A Journal of Travel in Cilicia Pedias and Trachæa, Isauria, and parts of Lycaonia and Cappadocia. *London*, 1879.

ԳՈԼԻՆԵՕՆ. *Ծանօթութիւնք ուղևորութեան 'ի Փոքր Ասիա.* — COLLIGNON MAXIME, Notes d'un Voyage en Asie-Mineure (1876). (*Revue des Deux Mondes*, Tome XXXVII-VIII. Livraisons I et IV), 1880.

ՀԷՄԻԼԴԸՆ. *Հետազննութիւնք 'ի Փոքր Ասիա, 'ի Պոնտոս և 'ի Հայս.* — J. HAMILTON WILLIAM, Researches in Asia Minor, Pontus and Arme-

nia, with some account of their antiquities and geology. 2 vol. *London*, 1842.

ԼՈՐԴԷ. Ասորւոց երկիր յայժմուս (1875-78). — LORTET, La Syrie d'aujourd'hui, (*Le Tour du Monde*, 1880-1883).

ԻԶԱՄՊԷՐ և ՇԱՎԷ. Ճանապարհագրութիւն Արեւելից. — AD. CHAVET et ISAMBERT, Itinéraire ... de l'Orient. Tome 3e. Syrie, Palestine, comprenant le Sinaï, l'Arabie Pétrée et la Cilicie. *Paris*, 1882.

ՄԱՐՄԻԷ. Ճանապարհք Ամանոսի. — G. MARMIER, Les Routes de l'Amanus. (8 pages). *Mâcon*.

ՎԻԼՍԸՆ. Բնական և պատմական աշխարհագրութիւն փոքր Ասիոյ. — CH. W. WILSON, COLONEL, Notes on the physical and historical Geography of Asia Minor, made during Journays in 1879-1882. (Proceedings of the Roy. Geog. Society). *London*, 1884.

ԷՏԻՊ ՄԷՀԷՄՄԷՏ. Ճանապարհագրութիւն Ոստանդնաւցութեան 'ի Մէքքէ (1682). — MEHEMMED EDIB BEN MEHEMMED, Itinéraire de Constantinople à la Mecque; Extrait de l'ouvrage turc intitulé Kitab menassik el-Hadj. Traduit par M. Bianchi. 1816-7.

ԷՆՑՈՒԸՐԹՀ. Ճանապարհորդութիւն և հետազննութիւնք 'ի փոքր Ասիա և 'ի Հայս. — AINSWORTH F., Travels and Researches in Asia Minor, Armenia. *London*, 1841.

ԴԵՔՍԻԷ. Ստորագրութիւն փոքր Ասիոյ, գեղարուեստք, յիշատակարանք, եւ այլն. — CH. TEXIER, Description de l'Asie-Mineure. Beaux arts, monuments historiques, plans et topographies des cités antiques. 3 tomes, avec 241 planches. *Paris*, 1839-1849.

ՄՈԼԴՔԷ. Թուղթք գրրայց Թուրքիոյ, յամս 1835-9. — VON MOLTKE, Briefe über Zustande und Begebenheiten in der Turkei, aus den Jahren 1835 bis 1839. *Berlin*, 1841.

Հաւաքումն Արեւմտեան և Արեւելեան Պատմչաց Խաչակրաց. RECUEIL DES HISTORIENS DES CROISADES:

— Historiens Occidentaux. Tomes I-III. *Paris*, 1844-66.

— Historiens Orientaux. Tomes I. II. 1869-72.

ԻՆՆՈՎԿԵՆՏԻՈՍ Գ. Գործք եւ Թուղթք. — Gesta et Epistolæ INNOCENTIJ III. (*Migne*, Patrologie, Tom. CCXIV-VII.)

ԼԵՈՆԱՐՏՈՍ Եպիսկոպոս Սիդոնիայ. Տեղեկութիւն դաււաքելութեան իւրոյ յԱրեւելս, յամի 1586. — Relazione di quanto ha trattato il VESCOVO DI SIDONIA (Leonardo), nella sua Missione in Oriente, data alla Santità di N. S. Sisto V. alli 17 aprile, 1587.

ՎԱՅԼ. Պատմութիւն Աբբասեան խալիֆայից Եգիպտոսի. — WEIL D. GUSTAV, Geschichte des Abbasiden Chalifats in Egypten. — *Stuttgart*, 1860-2.

ՄԱՍ-ԼԱԴՐԻ. Պատմութիւն Կիպրոս կղզւոյ. — De MAS LATRIE COMTE LOUIS, Histoire de l' Ile de Chypre. 3 Vol. *Paris*, 1852-1861.

Դիւանք Լատին Արեւելից. — ARCHIVES DE l'ORIENT LATIN, publiées sous le patronage de la Société de l'Orient Latin. Tomes I et II. *Paris*, 1881. 1884.

ՌԷՅ. Փռանկ գաղթականութիւնք յԱսորիս. — E. REY, Les Colonies Franques de Syrie. *Paris*, 1883.

ՀԱՅԴ. Պատմութիւն Վաճառականութեան Արեւելից. — HEYD V. WILHELM, Geschichte des Levantehandels in Mittelalter. *Stuttgart*, 1879.

ՄԱՃՃԻՈՐԷ. Ատանա քաղաք փոքր Ասիոյ. — MAGGIORE NICOLÒ (Sacerdote), Adana città dell'Asia Minore. Monografia. — *Palermo*, 1842.

ՌՈԴԷ. Լեւոն Բ (Ա). — RHODE THEODOR, König Leon II von Kleinarmenien. Inaugural Dissertation. *Göttingen*, 1869.

ՇՈՒՊԱԽ. Տեղեկութիւն թագընկալութեան Ռուբինի (Բրընճի). — SCHUBACH, Besondere und bisher grössentheils unbekannt gebliebene Nachricht von Rupino, velchen Kaiser Otto IV zum Könige von Armenien gemacht hat. (*Hanoverische Gelehrte Anzeigen*), 1852.

ՊԵՐԱԼ. Կապարահանք լերանց Կիլիկիոյ. — BERAL M. E., Notes sur les Mines de Plomb argentifère et non argentifère de Bulgar-dag-mahden, Kulek-mahden et Bereketly; Extraites d'un Rapport adressé au gouvernement Ottoman, à la suite d'une mission accomplie dans le Taurus Cilicien, pendant l'été de 1864. *Constantinople*, 1866.

ՔՈՉԻ. Ուղեւորութիւն 'ի Կիլիկեան Տաւրոս. — KOTSCHY D. THEODOR, Reise in den Cilicishen Taurus über Tarsus. *Gotha*, 1858.

ՊՈՒԱՍԻԷ. Ծաղկաբանութիւն Արեւելից. — BOISSIER EDMOND, Flora Orientalis: sive Enumeratio Plantarum in Oriente, a Grecia et Ægypto ad Indiæ fines. *Genevæ et Basileæ*, 1866-1884.

ՊՈՒԴՔՈՎՍՔԻ. Բառգիրք դրամագիտական. — BOUTKOWSKI ALEXANDRE, Dictionnaire Numismatique. *Leipzig*, 1877-1884.

ՇԼՈՒՄՊԷՐԿԷՐ. Դրամագիտութիւն Լատին Արեւելից. — SCHLUMBERGER GUSTAVE, Numismatique de l'Orient Latin. *Paris*, 1878.

— Նոյն. Կնքագրութիւն Բիւզանդական կնքնաւկալութեան. — SCHLUMBERGER, Sigillographie de l'Empire Byzantin. *Paris*, 1884.

# ՑԱՆԿ

## ԵՒ ԳԼԽԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ ՆԻՒԹՈՑ ԲԱՆԻՑ

## ԼԵՒՈՆ ՄԵԾԱԳՈՐԾ



## ՅԱՒԵԼՈՒԱԾ ԵՒ ՈՒՂՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ

---

## ՑԱՆԿ ՊԱՏԿԵՐԱՑ

*Անձանց, Տեղեաց, Դրամոց, Բուսոց, Նմանագրութեանց, եւ այլն.*

